ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

---

ԺԵ.

# ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑՔ ՀԱՅՈՑ

ՔՆՆԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԵՒ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽՆԵԱՑ ՀԱՅՈՑ

---

ՔՆՆՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԲՆԱԳԻՐՔ

ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ

Ի ՎԻԵՆՆԱԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ

---

ՀԱՏՈՐ Ա.

## ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑՔ ՀԱՅՈՑ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1897.

# ՍՐԲԱԶԱՆ
# ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑՔ ՀԱՅՈՑ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

ՊԱՏԱՐԱԳԱՑ ՅՈՒՆԱՑ, ԱՍՈՐՒՈՑ ԵՒ ԼԱՏԻՆԱՑՒՈՑ

ՀԱՆԴԵՐՁ

ՔՆՆՈՒԹԵԱՄԲՔ· ՆԱԽԱԳԻՏԵԼԵՕՔ ԵՒ ԾԱՆՕԹՈՒԹԵԱՄԲՔ

Ի Հ. ՅՈՎՍԷՓԱՅ Վ. ԳԱԹՐՃԵԱՆ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

---

ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ ՀԱՆԴԵՐՁ ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎՔ

Ի Հ. ՅԱԿՈՎԲՈՍԷ Վ. ՏԱՇԵԱՆ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ








ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1897.

''ԲԱԶՈՒՄ՝ են եկեղեցականաց Կարգաց զանազանութիւնք, Քարոզից եւ Աղաւթից եւ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՒՑԱՑ, . . . զորս բովանդակ բան առ բան ընդ քննութեամբ արկանել . . . չկինէաք հանդուրժող:,,

ԽՈՍՐՈՎ, Մեկն. Պատրգի:

# ԾԱՆՈՒՑՈՒՄՆ Ի ՀՐԱՏԱՐԱԿՉԷՆ

*Այս իւր տեսակին մէջ ցայսօր միակ մատեանը մեր մէջ տիրած շփոթ ու անճիշդ գաղափարները եւ ծրի ենթադրութիւնները ճշգրտելու նպատակն ունի՝ հիւսելով անընդհատ պատմութիւն մը Հայոց բազմաթիւ պատարագամատուցաց Ե դարէն ցայսօր, եւ առաջին անգամ յերեւան հանելով խորհրդատետրներու խումբ մը՝ դարերէ ի վեր Հայոց մեծագոյն մասին անծանօթ ու մոռացուած*. ասոնց իւրաքանչիւրին ներքին արժէքն ու յարգը կշռելով, եւ վերջապէս մեր Պաշտամանն իրաց մասին որոշ ու պայծառ տեղեկութիւններ տալով: Ընդարձակ երկասիրութիւնս լոյս հանելու առեն՝ պէտք կը տեսնենք քանի մը խօսքով բացատրել այն հանգամանքները, որոնց պատճառաւ գիրքն ուրիշ կերպարանօք կ՚երեւայ եւ կրկին ծաւալով նախնականին:*

*Քիչ գիրք կայ որ ասոր պէս՝ իւր ներկայ հանգամանաց մէջ՝ երեք անձանց աշխատութեանց արգասիքն ըլլայ: Հիմնական մասն Հեղինակին՝ Հ. Յովսէփայ Վ. Գաթրճեանց՝ երկարամեայ վաստակոց եւ հետազօտութեանց արդիւնքն է. այս հիմնական մասին արդի ձեւը՝ Խմբագրին կամ Հ. Քերովբէի Վ. Սպիննեան. իսկ արդի ծաւալն՝ բազմաթիւ նոր մասերով եւ բնագիրներով Հրատարակչէն է, վերջնոյս այնպէս՝ որ բոլորովին ինքնակաց է նախընթացներէն եւ դիւրաւ կրնայ զանազանուիլ:*

*Հեղինակն այլեւայլ պատարագաց միաղիր եղած էր արդէն 1865էն յառաջ. որ տարին իւր երկասիրութեան համար օրինակել տուած էր Մոնաքոնեան օրինակը. (1865 Յունուար 8 մինչեւ Յուլիս 19. տես նոյնը մեր Մատեն. Թ. 268:) Երկրորդ օրինակին միաղիր եղած էր 1867ին ի Փարիզ. բայց քանի մը պատարագաց ընդօրինակութիւնքն ստացած միայն 1870ին,*

* *Վերջին ժամանակներս ծանօթանալով Լիոնեան եւ Մոնաքոնեան օրինակները, միաղրութիւն եղած է պատարագացս ալ. սակայն տակաւին բոլորովին շփոթ են գաղափարներն ասոնց իւրաքանչիւրին արժէքին նկատմամբ: Այս անճշդութիւններէն ազատ չէ եկեղեցական պաշտամանց գրքերու մասին եղած հատուածն ի գիրս "Հայկական Թարգմանութիւնք Նախնեաց", Վենետ. 1889, ուր Պատարագամատուցաց վրայ՝ էջ 248—68: — Պատարագներս ծանօթ են նաեւ Պրայթմանի* (**Brightman, Liturgies, I,** *էջ ՂԸ — Թ:*)

երբ նոր աւարտած էր Հանգամանալից քննութիւնը, որով սկսած կ՚երեւան հետազօտութիւնքն ալ: Երկարամեայ աշխատութիւնքս աւելի զարգացած են Հեղինակին 1875ին այցելելովն ի Լիոն՝ ուր կը գտնուի բուն օրինակը: Այս միջոցին կ՚երեւայ ամէնէն աւելի զբաղած էր Հեղինակն առաջիկայ երկասիրութեամբ: Նազիանզեանւ չորս պատարագաց ծանօթութիւնները պարունակող տետրակը (տես վարը էջ 222 եւն) 1876 տարեթիւը կը կրէ: Ընդհանրապէս առաջիկայ Երկասիրութեանս մեծագոյն մասը գրի առնուած է 1875—77 տարիները. բայց Հեղինակը չէ դադրած միշտ երկասիրելէն եւ զարգացընելէն, նաեւ իւր տաժանելի հիւանդութեան (1877ի վերջերը) առաջին ժամանակները, մինչեւ որ ի վերջոյ բոլորովին անկարող եղաւ գրելու եւ ընդհանրապէս շարժելու անգամ՝ եւ կնքեց իւր մահկանացուն 1882ին սկիզբը*, առանց վերջնական կերպարանք տալու իւր այս եւ միւս երկասիրութեանց՝ ի միջի այլոց Հայ Կանոնագրոց քննութեան: Իւր հիւանդութեան ատենէն ալ կը գտնուին զործոյս վերաբերեալ մասեր ու արձագրութիւններ դողդոջուն եւ շատ տեղ անընթեռնլի գրով. այսպէս՝ Պատրաստութեան մասն 1879 տարեթիւը կը կրէ, թէեւ Պասեքի եւն կտորները ուրիշ թղթոց մէջ (մատիտաւ) 1878 մարտ 30 թուականաւ են, եւ տակաւին հաստատուն ձեռք մը կը ցուցընեն:

Ընդհանրապէս Հեղինակին սովորութիւնն է իւր երկասիրութիւնքն քանի մ՚անգամ՛ յղկել ու ողորկել. առով ամէն մէկ հասած քանի մը խմբագրութեամբ կը գտնուի միշտ իւր թղթերուն մէջ: Այսպէս է նաեւ առաջիկայ Երկասիրութիւնս՝ որուն վերաբերեալ թղթերը մեծ դէզ մը կը կազմեն մանր ու մեծ թղթիկներու եւ տետրակներու. տեղ մը բնագիրներ օրինակուած (յաճախ քանի մ՚անգամ՛), ուրիշ տեղ մը քննութեանց այս կամ՛ այն մասն, այլուր ծանօթութիւնք պատարագաց, դարձեալ շարունակութիւնք քննութեանց, յաւելմունք այս կամ՛ այն տեղւոյ, հաւաքմունք նիւթոց եւ առաջ հետազօտութեանց, եւ նմաններ: Աւելցընենք ասոր վրայ միեւնոյն մասերու այլեւայլ ձեւով եւ խմբագրութեամբ գտնուած թղթերը, եւ կը տեսնենք թէ ինչ դժուար եւ տաժանելի գործ է թղթերու ու խմբագրութեանց այս այլայլութեան մէջ ընտրութիւն ընել, կարեւորն ու վերջնականն որոշել անկարեւորէն եւ առաջին ուրուագծերէն, ցիրուցան մասերն ու մանունք իրենց տեղը բերել եւ ամբողջը դասաւորել ու կապակցել: Անշուշտ այս վերջնական աշխատութեան ալ մէկ մեծ մասն ըրած էր Հեղինակը, բայց հիւանդութեամբն արգելուած՝ ուրիշի մը մնաց ի գլուխ հանել:

* Հ. Յովսէփ Վ. (մանկութեան անունն՝ Աւետիք) Գաթրճեան ծնած է ի Կ. Պոլիս 1820ին Փետր. 19. Վիեննա Մխիթարեանց վանքն եկած՝ 1833 Մայիս 25, Միաբանութեան ուխտեալ անդամ եղած՝ 1838, Մայիս 20, քահանայութեան ձեռնադրութիւն ընդունած 1841 Մայիս 30: Վախճանած է 1882 Յունուար 9, (ըստ հին տոմարի՝ 28 Դեկտ. 1881.) հազիւ 62 տարեկան, վերջին երեք չորս տարիներն ալ հիւանդութեամբ անկարող եղած իւր գործունէութիւնը շարունակելու:

Այս տաժանելի գործը կատարած է՝ նոյնպէս երկարամեայ աշխատութեամբ՝ Խմբագիրն Հ. Քերովբէ Վրդ. Սպենեան, որ ամէն թղթերն մի առ մի քննած, կարգի դրած եւ դասաւորած է: Մինչեւ Հեղինակին մահը՝ (1882 Յունուար) գործոյս ամէն մասանց կարգաւորութիւնն ու աշխատութիւնքն ըրած է Հեղինակին հսկողութեամբն եւ անոր դիտաւորութեանց ու կամաց համեմատ՝ ի Կ.Պոլիս: Առջեւս ունիմ՛ կրկին վերջնական ընդօրինակութիւններ երկասիրութեանս. առաջինը՝ որ յետոյ մէկդի դրուած է՝ ճակատին վրայ 1879 թուականը կը կրէ եւ վերջը ծանօթութիւնս՝ "Կատարեցաւ վերջին ընդօրինակութիւնս ի Փանկալդի ի Վանատան Մխիթարեանց Վիեննայ 1882, ի տօնի Ընծայման Կուսին:,, Բայց արդէն ճակատին վրայ մատիտով նշանակուած "վերջին վերատեսութիւն 1883, 1 Յունուար,, խօսքը կը ցուցնէ որ Խմբագիրը չէր դադրած աշխատելէ: Ով որ այսպիսի հանգամանաց մէջ գտնուած երկասիրութիւն մը տպագրութեան պատրաստած է՝ գիտէ թէ որչափ ճշդելու ու ճշգրտելու կէտեր կը գտնուին, գլուխները յաճախ աւելի լաւ դասաւորել պէտք կ՚ըլլայ, կրկնութիւնքը հանել, կոչումնքները համեմատել, անյարմար ու անկապ մնացած մասերը պատշաճեցընել կամ՛ յարմար տեղ փոխադրել, մթին ու թերատ մասերը պարզել, եւն: Այս ընդօրինակութիւնն ալ տպագրութեան տակաւին յարմար չէ տեսած Խմբագիրը, շատ մասերն այլազգ դասաւորելու, բազմաթիւ կէտեր ճշդելու կարօտ: Եւ այսպէս պէտք եղած է ընդարձակ երկասիրութիւնս նորէն ընդօրինակել, զոր ի գլուխ ալ հանած է: Վերջին ընդօրինակութիւնս ալ՝ որուն վրայէն եղած է մեր հրատարակութիւնը՝ նախընթացին թուականները կը կրէ քիչ տարբերութեամբ. հոս ճակատին վրայ նշանակուած է 1878, իսկ վերջը՝ "Կատարեցաւ վերջին ընդօրինակութիւնս ի Փանկալդի ի Վանատան Մխիթարեանց Վիեննայ 1883, Նոյ. 21 ի տօնի ընծայման Կուսին:,, Ըստ այսմ՛ տարի մը միայն ուշ է ասոր ժամանակը. սակայն Խմբագիրն անկէ ետքն ալ ի Վիեննա շարունակած է իւր խնամքն՝ ամէն մանր կէտերն ալ վերջնականապէս ճշգրտելու: Տպագրութեան պատրաստելու համար 1885 Փետր. 22ին Յանձնաժողով մը կազմուեցաւ երեք անձէ, որոնց դիտողութիւնքն ալ կը գտնենք նշանակուած: Այս դիտողութեանց համեմատ երկրորդ անգամ՛ քննած է Խմբագիրն, եւ այս միջոցին նշանակած է քանի մասերու տեղափոխութիւնը, զոր պահեցինք մենք ալ: Վերջին վերաքննութիւնը կատարած է՝ ինչպէս օր ըստ օրէ նշանակուած կը գտնենք, 1885 Դեկտ. 7էն սկսեալ մինչեւ 1886 ապրիլ 16: Վերջապէս Խմբագիրը ձեռքէ չէ թողուցած երկասիրութիւնս՝ չլանալով ամէն խնամք՝ մինչեւ իւր ալ մահը (1886 Դեկտ. 3:)

Խմբագրին այս երկարատեւ խնամքն եղած է ամենայն հոգացողութեամբ եւ խղճմտութեամբ: Իմաստ մը, խօսք մը, բառ մ՛անգամ՛ չէ

աւելցուցած կամ փոփոխած իւր կողմանէ: Ուր բնագրին միտք իմաստն պարզելու համար բառ մ'ալ աւելցընել կամ փոխել պէտք էր, նշանակած է նոյնը մատիտով որոշելով Հեղինակին գրածէն, կամ “Խմբ.„ համառօտութեամբ զանազանելով: Քիչ բան կայ աւելցուած իր կողմանէ (տես այսպէս էջ 557:) Բայց վերջին ընդօրինակութեան մէջ աւելցուած էր մեր Սովորականին բնագիրն՝ համեմատութեամբ քանի մը տպագրութեանց եւ Լամբրոնեանին: Դժբախտաբար մեզի կարելի չեղաւ Խմբագրին այս աշխատութիւնը պահել. որուն տեղ պէտք եղաւ նոր պատրաստել նոյն մասն համեմատութեամբ իբր 50 օրինակաց, նոյնպէս Լամբրոնեան Խորհրդատետրը լիակատար դնել առանձինն: Գրքին ծայրն ալ աւելցուցած էր Խմբագիրն նիւթոց եւ անուանց ցանկ մը. իսկ բովանդակ մատեանը բաժնած այլեւայլ հատածներու (§. 1—427:)

Գիրքն այս հանգամանաց մէջն էր երբ 1893ի վերջերը սկիզբն եղաւ տպագրութեան: Հրատարակչին պատշաճ երեւցաւ պահել այն ձեւն՝ զոր ունէր երկասիրութիւնս Խմբագրին վերջին ընդօրինակութեան մէջ: Անշուշտ կարելի էր Հեղինակին թղթերուն մէջ գտնել տակաւին շատ բան որ դուրս մնացած ըլլայ Խմբագրին ընդօրինակութենէն, ինչպէս մէկ երկու տեղ ալ արդեամբ առած ենք այսպիսի կտորներ. (տես Մասն Ը՝ Յաւելուածը:) Բայց այս նկատմամբ ընդհանրապէս ուզեցինք կապուիլ Խմբագրին պատրաստած ձեռագրին. վասն զի՝ ինչպէս ըսինք՝ Խմբագիրը գործած է Հեղինակին առաջնորդութեամբ՝ ցորչափ կենդանի էր վերջինս, ուստի անշուշտ այս էր նաեւ անոր դիտածը: Բաց աստի թղթերուն մէջ շատ բան կրկնութիւն է միայն ուրիշ խմբագրութեամբ, երբեմն աւելի համառօտ եւ երբեմն աւելի ճոխացած: Ու տարակոյս չկայ որ Հեղինակին նպատակը չէր իւր երկասիրութիւնը բեռնաւորել այսպիսի յաւելուածոյ կտորներով:

Այս հանգամանաց մէջ գտնուող երկասիրութեան մը հրատարակութեան համար պահանջուած խնամքէն զատ (— նաեւ վերջին ընդօրինակութիւնը շատ բան խնդրական ու քննութեան կարօտ նշանակած էր, կոչմունքն համեմատելի, հարեւանցի նշանակուածները փնտռելու եւ գտնելով զետեղելու, եւն —) կը մնար մեզի աւելի ծանրակշիռ պարտք մը՝ թերի մասերը լրացընել:

Նախ բնագրաց ընդօրինակութիւնք՝ սակաւ բացառութեամբ՝ պարզ օրինակուած էին նաեւ Խմբագրին կողմանէ, ձեռագրաց տարբերութիւնքն՝ ուր կային, սովորաբար առանց նշանակելու թողուած: Այս թերին լրացուցինք, ամէն բնագիր քննադատութեան պահանջած ձեւին վերածելով եւ ձեռագրաց համեմատութիւնները հոգալով: Դիւրաւ կ'որոշուին մեր յօրինած այս մասերը. մեծ տառերով տպուած բնագրին ներքեւ դրուած են համեմատութիւնքն աւելի մանր տառերով՝ բնագրին տողերուն կարգաւ նշանա-

կուած. տողերն ալ աւելի կարճ են քան բնագրինը: Այս շատ ընթերցող-ներու համար աւելորդ երեւցած աշխատութիւնն՝ որչափ բանասիրութեան համար կարեւոր է, նոյնչափ ցամաք ու տաժանելի է եւ ամենամեծ ճշդու-թեան կարօտ նաեւ մանունց մէջ:

Կ՚երեւայ թէ Հեղինակը յետոյ իր երկասիրութեան ծրագիրը սեղմած ամփոփած էր: Բնագրաց ընդօրինակութիւնն իր թղթերուն մէջ՝ սակաւ բա-ցառութեամբ՝ գրեթէ լիակատար կը գտնենք: Բայց շատ բնագիրներ՝ որոնք այնչափ մեծ յարգ չունին՝ բոլորովին մէկդի թողուած էին: Որեւէ հետազօ-տութիւն կամ քննութիւն գրած չգտանք անոնց մասին Հեղինակէն. ուստի եւ վերջին կրկին ընդօրինակութեանց մէջ ալ ի սպառ զանց առնուած էին Խմբագրէն: Առաջիկայ երկասիրութեանս մէջ մնած էին ըստ այսմ՝ միայն սա պատարագները՝ Բարսղի (հին թարգմանութիւնն), չորս Նազիազեանք (անուանակոչեալքն Սահակայ, Գրիգորի Աստուածաբանի, Կիւրղի եւ Աթա-նասի), եւ քաղուածքներ մեր Պատարագէն՝ ըստ Վատիկանեան եւ ըստ Լամբրոնեան օրինակին, վերջինքս ալ ըստ այսմ ոչ լիակատար. (տես վարը էջ 503—507 եւ 508 ծան.:) — Սակայն անոնցմէ դուրս կը մնային տա-կաւին բազմաթիւ Պատարագներ, որոնք՝ թէեւ չունենան նախընթացներուն յարգը՝ անհրաժեշտ էին գոնէ ամբողջութեան համար: Բաց աստի՝ անոնց մէկ քանին (այսպէս Ոսկեբերանի անուն կրողը) կարեւոր էին մեր արդի Պատարագին պատմութեան համար, մեծ ազդեցութիւն ունեցած ըլլալով եւ անոր այնչափ մասեր փոխ տալով, այնպէս որ զանիկայ Բիւզանդեան պա-տարագաց կարգը դասելու պէտք տեսած են շատ գիտնականք. (ի միջի այլոց Ա. Դանիէլ, Շէթէք, Պրայթման եւ ուրիշներ:) Հռոմայեցւոց պատա-րագն՝ օրինակի համար՝ ուշ ժամանակի է, հաւանականօրէն Լամբրոնացւոյ թարգմանութիւնն. եւ սակայն անկէ առած ենք մեր Սովորականի Զգես-տաւորութիւնն եւ Մտից մասերէն մէկ քանին: Բարսղի պատարագին երկրորդ թարգմանութիւնն անշուշտ չունի հին թարգմանութեան յարգը. բայց եւ այնպէս աւելորդ չէ՝ նոյն իսկ պարզ լեզուի եւ թարգմանութեան պէս-պիսութեան համար՝ իրարու համեմատել երկուքը, որմէ՝ բաց աստի՝ կը տեսնուի նաեւ թէ ինչպէս պատարագամատոյց մատեանները հետ զհետէ կը ճոխանան: Նոյնը հասկընալու ենք մնացեալներուն համար ալ:

Պէտք տեսանք ըստ այսմ երկասիրութեանս մէջ առնուլ ամէն պա-տարագ մեր նախնեաց թարգմանութեամբ՝ որ մեզի ծանօթ էր, այն ձեւով ու կերպարանօք՝ որ ունէին նախընթացները Հեղինակէն պատրաստուած: Բնագիրներուն կցեցինք ըստ այսմ նոյնպէս համեմատութիւններ ձեռագրաց՝ ինչպէս ըրած էինք միւսներուն. մանրագիր երկսիւն դրինք նաեւ ծանօթու-թիւններ անոնց ներքնոյն մասին՝ գլխաւորաբար հայերէն թարգմանու-թիւնքն համեմատելով յոյն, ասորի եւ լատին սկզբնագիրներուն հետ: Իւրա-

քանչիւրին սկիզբը դրինք հետազօտութիւններ՝ ընդարձակ կամ համառօտ ըստ նիւթոյն "Ազդումն,, կամ "Տեղեկութիւնք,, բաժնին տակ: Վերջապէս ջանացինք ըստ կարի անթերի եւ ամբողջական ընելու:

Գլխաւորաբար այս նոր մասերը կամ յաւելմունքն եղան որ երկասիրութեանս նախնական ծաւալը կրկնապատիկ մեծցուցին հրատարակութեան ատեն: Բայց եւ այնպէս առաջիկայ գրքիս մէջ մեր աւելցուցած մասերն՝ որոնց մէջ յայտնուած կարծեաց պատասխանատուութիւնը՝ բնական է՝ միայն մեր վրայ կը ծանրանայ, այն կերպով եւ այնպիսի տեղեր զետեղուած են որ մէկ կողմանէ չընդհատեն պատարագամատուցաց պատմութիւնն՝ այլ ընդհակառակն լրացընեն ու շարունակեն, միւս կողմանէ չխառնուին Հեղինակին բուն երկասիրութեան հետ: Ընդհանրապէս մեր աւելցուցած մասերը զատ գլուխ կը կազմեն միշտ՝ քիչ բացառութեամբ. եւ ամէնուն սկիզբը ծանօթութեան մէջ նշանակուած է որոշ կերպով այն մասերուն Հրատարակչէն ըլլալը: Ընդհանրապէս կրնանք ըսել առաջիկայ երկասիրութեանս կէսէն աւելը (էջ 341էն սկսեալ) մեր աւելցուցած մասն է, անկէ յառաջ եղածը Հեղինակին. սակայն առաջին մասին մէջ ալ կան մեզմէ աւելցուած բաժիններ, ինչպէս երկրորդին մէջ ալ քանի մը բան Հեղինակէն է:

Աւելի որոշ ընելու համար կը դնենք հոս այս մասերը: (Գ, 1) "Հայ Բարսեղեան Պատարագին օրինակները,, (էջ 81—87) կրկին փակագծի մէջ առնուած. — Բարսեղեան Պատարագին յոյն բնագիրն ու համեմատութիւնքն՝ ըստ դիտաւորութեան Խմբագրին (էջ 121 եւն, էջ 119 ծան. բնագրին համար համեմատելու է մեր յետոյ ըսածը յէջն 345, ծան. 1.) — "Թովմայ առաքելոյ,, տաղը (էջ 169—70.) — (Գ, 6) "Բարսղի Պատարագին երկրորդ թարգմանութիւնը՝,, տեղեկութիւնք ու բնագիր եւն (էջ 171—216.) — "Ծանօթութիւն,, հատածը Աթանասի պատարագէն յառաջ. (էջ 269 - 71.) — Ծանօթութիւնքն Զ. պատարագի (էջ 300—303.) — Բովանդակ Զ Մասը "Ուրիշ խորհրդամատոյցք Ժ դարէն մինչեւ ԺԳ դարուն վերջը,, (էջ 341— 500), ի մասնաւորի քննութիւնք, բնագիրքն եւն սա պատարագաց՝ Ոսկերերանի (էջ 342—84.) Իգնատիոսի (էջ 385—411.) Նախարբեւոց (էջ 412—29.), Ցակոբայ (էջ 430—50), Հռովմայեցւոց պատարագ (էջ 451—66) եւ Միաբանողաց Միսալ (էջ 467—500:) — Նաեւ յաջորդ Է Մասին՝ որ է "Հայոց այժմու Խորհրդամատոյց ԺԱ դարուն սկիզբներէն մինչեւ ցայսօր,, ամենամեծ բաժինը մերն է, Հեղինակէն ըլլալով միայն "ըստ Վատիկանեան օրինակին,, հատածը (կամ էջ 501—507) եւ Խմբագրէն՝ փոքրիկ յառաջաբան մը մեր Սովորականին վրայ (կամ էջ 557—508:) Մեր յաւելուածն են մացեալները, այսինքն՝ "Ազդումն եւ Պատարագն առ Ցովհ. Արճիշեցւոյ,, (էջ 508—18), Լամբրոնեան Պատարագ

(էջ 519—56), Տեղեկութիւնք մեր Սովորականին վրայ հանդերձ ուրուագծերով Լիոնեան եւ Կիլիկեան օրինակաց եւն. (էջ 558—616.) եւ վերջապէս Բնագիրն մեր Սովորական Պատարագին Հայոց՝ համեմատութեամբ իբր 50 օրինակաց (էջ 617 եւն մինչեւ վերջ:) — Գիրքը կը փակուի Ը. Մասով կամ Յաւելուածով՝ Հայոց տաճարաց, պատարագի զգեստուց եւ կահուց մասին, որ Հեղինակէն է: Այս վերջին մասը ճոխացուցինք այլեւայլ յաւելուածներով՝ որ քաղուած են Հեղինակին թղթերէն: — Այս մասերէն զատ կը կրկնենք որ ամէն բնագրաց ներքեւ դրուած ձեռագիրներու համեմատութիւնքն ալ մերն են:

Ուրիշ տեղեր քիչ անգամ պատշաճ տեսանք փոքր կամ մեծ յաւելուած մ՚ընել ծանօթութեանց շարքին մէջ: Ասոնք՝ ուր որ եղած են՝ դիւրաւ կը զանազանուին, վասն զի տարբեր մանրաձեւ տառերով տպուած են եւ ընդհանրապէս “ՀՐՏՐ„ ստորագրութիւնը կը կրեն:

Գրքին ծայրը Խմբագրէն կար աւելցուած, ինչպէս ըսինք, նիւթոց եւ անուանց ցանկ մ՚ըստ իր վերջին ընդօրինակութեան: Այս մասն աւելորդ երեւցաւ առնուլ, որ արդէն քանի մ՚անգամ պիտի կրկնապատկուէր երկասիրութեանս արդի ծաւալին պատճառաւ: Այսպիսի գրքի մը համար նշանակութիւն չունի՝ կարծենք՝ գիտնալ թէ այս կամ այն անունը քանի անգամ յիշուած է եւն: Իսկ նիւթոց համար՝ կարծենք կը բաւէ յաջորդ գլխոց ցանկն, զոր ընդարձակ խմբագրեցինք այն պատճառաւ որ ամէն կարեւոր նիւթ յիշուի եւ նիւթոց յատուկ ցանկի մը տեղը բռնէ:

Մատենիս երկու վերջին ընդօրինակութեանց մէջ կար ուրիշ երկար մաս մ՚ալ, որ այս հրատարակութեան մէջ կը պակսի: Այս մասն էր “Հերձուած եւ Հանգանակ„ խորագրով, եւ երկու բաժին ունէր. առաջինը Հայոց Եկեղեցական Պատմութեան քննութիւն մըն է՝ դիտելով գլխաւորաբար պարզաբանել Միաբնէից պատճառաւ ծագած բազմադարեան վէճերն ի Հայաստան արդէն Զ դարուն սկզբէն սկսելով. երկրորդը Հայոց հանգանակին պատմութիւնը կը հիւսէ, քննելով անոր ծագումը, զարգացումն եւ գործածութիւնն առ Հայս: Երկու մասերս ալ առաջին ընդօրինակութեան մէջ՝ Տաճարաց մասին Յաւելուածոյն հետ՝ դրուած էին Նազիանզեան չորս պատարագներէն ետքը, երկրորդ ընդօրինակութեան մէջ գրքին ծայրը իբր Յաւելուած: Ասոնք անշուշտ քիչ շատ կապ ունին Պատարագաց հետ. Հանգանակն արդէն Պատարագաց ալ մաս է, իսկ եկեղեցական պատմութեան այն մասերն ալ առանց օգտի չեն պատարագաց վերաբերեալ քանի մը խնդիրներու լուսաւորութեան՝ ի մասնաւորի Բաժակի խնդրին եւ Երեքսրբենին ծանօթ յաւելուածին: Սակայն նաեւ միայն այսչափ կապ ունին. այլապէս բոլորովին անկախ խնդիրներ են եւ անկախ գրութիւնք: Հանգանակի քննութիւնն, զոր Հեղինակն աշխատասիրած էր 1870ին, արդէն

*առանձին ալ տպուեցաւ՝ հայ (Վիեննա 1891) եւ լատին (անդ՝ 1893) լեզուաւ խմբագրուած Հեղինակէն:* Միւս մասն ալ արժանի է առանձինն հրատարակութեան, մանաւանդ որ Հեղինակին թղթերուն մէջ կը գտնուի նոյնը շատ աւելի ընդարձակ, իսկ Խմբագրին ընդօրինակածն՝ աւելի համառօտութիւն մըն է: Ուստի դուրս թողուլ պէտք տեսանք եւ ուրիշ առթի պահել: Արդէն Հեղինակն ալ նախապէս իբր անկախ գործ երկասիրել դիտած էր:***

*Այս հանգամանօք կը ներկայացընենք այսօր՝ Հեղինակին մահուանէն իբր 15 տարի ետքը՝ երկասիրութիւն մ'որ տարիներու աշխատութիւն արժած է Հեղինակին, Խմբագրին եւ նաեւ Հրատարակչին. միանգամայն՝ կը համարձակինք ըսել՝ իբրեւ նախընծայ օրինակ մ'այնպիսի Հրատարակութեան մեր Նախնեաց երկերուն, որ արդի քննասիրութեան ամէն պահանջմունք գոհացընէ: Աջողելով Տերամբ՝ կը յուսանք որ լոյս տեսնէ ժամանակին Հեղինակիս երկրորդ մեծ երկասիրութիւնն՝ Կանոնագիրք Հայոց, որուն դժբախտաբար պակսած է Խմբագրի մը խնամքն: Կը կարծենք որ բազմերախտ Հեղինակին յիշատակն աւելի պատշաճ կերպով պիտի պահուի եւ յաջորդաց աւանդուի՝ իւր այս երկու երկասիրութեանց հրատարակութեամբն, որ Հեղինակին գրաւոր վաստակոց*** գլուխ-գործոց երկերէն են:*

*Հ. Յ. ՏԱՇԵԱՆ:*

---

* Հեղինակին դիտաւորութիւնն էր նաեւ առաջիկայ երկասիրութիւնս հրատարակել լատիներէն լեզուաւ, հայկական՝ մանաւանդ հնագոյն թանկագին հինգ պատարագները՝ ծանօթացընելու համար եւրոպացի գիտնոց: Իւր թղթոց մէջ կը գտնուին այս նկատմամբ աշխատսիրութիւններ, բայց ո՛չ ամբողջական եւ ո՛չ շարունակեալ կարգաւ:

** Եկեղեցական Պատմութեան այս քննութիւնը գրած էր Հեղինակը նախապէս իբր Բ Տետրակ իւր գործոյն "Իրաւախոհի կեդծիք„ եւն (Վիեննա 1873): Արդէն առաջին երկու երեք թերթերը շարուած ալ էին. բայց խոչընդոտներու պատճառաւ առ ժամն խափանուած տպագրութիւնը բոլորովին մէկդի թողուած էր Հեղինակին հիւանդութեամբն: Խմբագիրն՝ իբր ասոր փոխարէն՝ կարեւոր մասերը քաղելով դրած էր գործոյս իբրեւ Յաւելուած: Հրատարակութիւնը կը մնայ ապագային:

*** Յիշենք ի միջի այլոց՝ "Տիեզերական Պատմութիւն„ Հտր. Ա (Վիեննա 1849) եւ Հտր. Բ (անդ՝ 1852) հեղինակին ամէն նշանաւոր գործքերէն. — "Պատմութիւն մատենագրութեան Հայոց: Ա. Անգիր ժամանակ„. (Վիեննա 1851) թերի մնացած. — "Հիմնական տարբերութիւն Կաթողիկէ եւ Ըջմիածնական դաւանութեանց„. Կ. Պոլիս 1864. — "Իրաւախոհի կեղծիք եւ իրաց ճշմարտութիւնք„ (Տետր. Ա.) Վիեննա 1873. — "Հանգիստ երանելւոյն Յովհաննու, Dormitio Joannis„ հայերէն բնագրաւ եւ լատ. թարգմանութեամբ, Վիեննա 1877. — "Հանգանակ հաւատոյ որով վարի Հայաստանեայց եկեղեցի„ եւն, Վիեննա 1891. նոյնը լատ. De Fidei Symbolo եւն՝ անդ, 1893: — Թարգմանութիւններէն՝ "Կիկերոնեայ Խօսք վասն ծերութեան„, Վիեննա 1843. — "Քսենոփոնտեայ Կիւրոսի խրատք„ յոյն բնագրէն, Վիեննա 1843. — "Ս. Կիպրիանու Գիրք վասն միութեան եկեղեցւոյ„ Վիեննա 1846. — "Կ. Կուրտեայ՝ Վարք Աղեքսանդրի Մեծի„ Հտր. Ա—Բ. Վիեննա 1843. — Փր. Մոշնիքայ "Երկրաչափութիւն„, Վիեննա 1864: — Կը թողունք յիշել բազմաթիւ մանունք (զոր օր. "Ջանի մը խօսք Մասիս լրագրոյ 114 թուոյն վրայ„, 1854. "Բան դամբանական ի մահ Պետր. Եաղըզճեան„, Վիեննա 1875), շատերն անանուն՝ մանաւանդ ի Կ. Պոլիս. նոյնպէս իւր գործակցութիւնն այլեւայլ գրոց մէջ, ի միջի այլոց "Բոսուետայ Խօսք վասն տիեզերական Պատմութեան„ Վիեննա 1841, եւն: Թող եւ անտիպ մնացած բազմաթիւ կարեւոր ուսումնասիրութիւնները:

# ՑԱՆԿ*



---

* Ցանկիս մէջ աստղանիշ (*) են երկասիրութեանս այն Մասերն ու Գլուխներն, որ մեզմէ աւելցուած են, ինչպէս Նախընթաց ծանուցման մէջ նշանակեցինք: ՀՐՏՐ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Առաջիկայ չափաւոր երկասիրութեանս ձեռնարկած ատեն՝ մէկ չէ մեր դիտաւորութիւնը։ Բնականապէս գիտած ենք նախնաբար հանգամանել եկեղեցական պաշտամանց պատմութեան եւ քննադատութեան՝ ինչ որ կըրնանք գլխաւորաբար մեր աղբիւրներուն հետազօտութենէն հանել. աս ազնուական ուսման՝ որն որ մեր օրերը նորէն շատերը մասնաւոր սիրելութեամբ մը կը զբաղցընէ։

Նախ, ինչպէս ի դէպ է, պաշտօնական իրաց բուն կեդրոնէն — Պատարագէն — կը սկսի մեր հետազօտութիւնը։ Ասիկայ, եթէ չենք խաբուիր, ընդունայն եղած չըլլար՝ եթէ ասով գոնէ ինչ ինչ երեւան հանուի՝ որն որ առհասարակ բոլոր պաշտամանց գործածուած բնագիրներուն բազմօք ընդհատուած շղթային կարենայ գոնէ օղ մը կազմել, որով իրաց ընթացից եւ հետեւորդաց վրայ քիչ շատ լոյս ցոլանայ։

Բայց մեզի Հայոցս համար այլեւայլ մասնաւոր պիտոյք կան, որոնց աս խուզարկութիւններէն հիմնական լուծում կը սպասուի։ Մեր պատարագին՝ ինչպէս ուրիշ պաշտամանց գիրքերուն ալ՝ ծագման եւ հնութեան նկատմամբ դարաւոր եղած ձրի ենթադրութիւններէն հրաժարելէն ետքը՝ զորն որ մենք՝ հիմայ իբր 35 տարի է՝* շատերուն հետ ըրած էինք, գիտնական հարկ մըն էր՝ որ ջանայինք գիտնալ ի մասնաւորի մեր Պատարագին ճշմարիտ ծագումը եւ թէ ինչ եղած է սկզբնաբար անոր իրական վիճակը։

Սակայն ասանկով ստացուած ծանօթութիւնները չեն մնար ամուլ եւ անպտուղ։ Որո՞ւն ծանօթ չեն կաթողիկէ միութենէ դուրս կեցող բոլոր Արեւելեայց՝ պաշտամանց մասին ունեցած եղական ըմբռնումներն ու խառնակութիւնները, եւ ի մասնաւորի անոնց մէջ հայկականք։ Ուստի բազմապատիկ պէտք ունէինք աս ծանօթութեանց եւ ունինք՝ մեր ոչ-համամիտ ազգային-

---

* Պէտք է գիտնալ միշտ որ Հեղինակը կը գրէ 1875—77 տարեաց մէջ։ Ըստ այսմ հասկընալու է վերոյիշեալն եւ անոր նման խօսքերը։
ՀՐՏՐ.

ներուն հետ գրով եւ բերանացի խօսելու եւ վիճելու ատեն, որոնց շեղումներն, ինչպէս յայտնի է, գլխաւորաբար Խորհրդոց կատարողութեան մասին են, եւ որոնք իրենց յատկացած աններելի սովորութիւնները շատ հին եւ անյիշատակ ժամանակներու կ՚ընծայեն։

Բայց մենք կաթողիկեայքս ալ ունինք դեռ մեր մէջ պաշտօնական գրոց՝ ուստի նաեւ Պատարագի՝ բնագրին եւ արարողութեանց նկատմամբ շատ մը տատամնութիւններ։ Ասոնց լուծումը, թէպէտ եւ բարձրագոյն եկեղեցական իշխանութեան վերաբերած ըլլայ, ապահովապէս եւ յարմարապէս ընելու համար՝ դէթ չի կրնար անօգուտ ըլլալ այսպիսի խուզարկու երկասիրութիւն մը՝ երբ որ ուզուի վերջնական որոշման մը գալ։

Ստաղձ առ այս աշխատութիւն, ինչպէս ակնարկեցինք, մեր աղբիւրներէն ունինք գլխաւորաբար, որոնք թէպէտ առատ չհոսեն՝ սակայն կը ծորեն։ Գլխաւոր զօրութիւննիս պիտ՚որ կայանայ՝ ձեռքերնիս ունեցածէն, ցայսօր եղածէն լաւագոյն գործածութիւն մ՚ընել՝ աւելի առողջ բանադատութեամբ եւ ի լոյս պաշտօնական իրաց գիտութեան մեզի նպաստ առնլով։ Ասով կը յուսանք թէ յաջողինք մեր պաշտօնական գրոց՝ — առ այժմ մեր սրբազան Պատարագի կատարողութեան վերաբերեալ գրոց՝ — ճշմարիտ ծագումը յայտնել, եւ անոր՝ սանկ ըսենք՝ պատմութիւնը հիւսել։

ՍՐԲԱԶԱՆ

# ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑՔ ՀԱՅՈՑ

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

*Շատերը շատ բան խօսած ու պատմած են Հայոց պատարագին եւ պատարագամատուցին վրայ, բայց կարծենք՝ ոչ բաւականապէս։ Ուրիշ եղած են ժամանակները, եւ գիտութիւնը կ'ուզէ հիմայ ուսում մը՝ որն որ կարելի եղածին չափ աւելի շրջահայեաց ըլլայ, եւ մեր ոչ այնչափ հարուստ աղբիւրներուն լաւագոյն գործածութիւն մ'ընէ։*

*Շատ չէ՝ 16րդ դարուն եղաւ՝ որ աս աղօթական գիտութիւնն իբրեւ աստուածաբանական հրահանգաց շաւիղ մը յառաջ եկաւ մոլորանուն Նորոգութեան դէմ, որն որ սուրբ խորհուրդներն ու նոր օրինաց զոհը կ'ուրանար. ուսում կամ գիտութիւն մը՝ որուն հիմը հարկաւ ուրիշ բան չէր կրնար ըլլալ, բայց եթէ՝ որ աղօթից եւ քարոզութեան բանին համաձայնութիւնը մէջերնին կատարեալ պիտ'որ ըլլար, ինչպէս Ս. Կեղեստինոս՝ հին Քահանայապետներէն մէկը՝ ըսած էր գեղեցկապէս՝ թէ "Օրէնք աղօթից տայ զօրէնս հաւատոյ."* — Lex orandi legem dat credendi.[1]

*Ասկէ՝ այլեւայլ առանձին պատարագներ հրատարակութեան տրուած. ասկէ՝ լուսաւորութիւնք անոնց վրայ. ասկէ՝ վերջապէս հաւաքումներ պատարագաց այլեւայլ ազգաց։ Ի՞նչ խուճապ եւ տագնապ բողոքականաց՝ որոնք ընդ ծով եւ ընդ ցամաք Արեւելք կը դիմեն հարց եւ խնդիր ընելու ազգերու, եւ լսելու իրենց համոզում մը։ Արդիւնք ի՞նչ. — Ամօթապարտութիւն. Աստուած այնպէս նախախնամած ըլլալով՝ որ Արեւելք յայսմ աւելի բացայայտ ըլլայ իրենց դէմ իր պաշտամանց գրքերովը։ Մօտ տարիներ են որ անոնցմէ մէկը, Հերմանն Ադալբերտ Դանիէլ իրենց աստուածաբան-պատմական ընկերութեան անդամ՝*

---

[1] **Տես նաեւ աս խօսքը.** Ut legem credendi lex statuat supplicandi. (*Coelestini* Epist. ad Episcopos Galliae.)

*փիլիսոփայութեան վարպետ, շատ հմտութեամբ Յունաց եւ ուրիշ ոմանց Արեւելեայց պատարագները հրատարակելով՝ սանկ խոստովանութեամբ կը սկսի. "Կը խոստովանուի ան զորն որ ամէն լաւաց հետ մեծապէս կ'ողբանք՝ թէ սրբազան խորհուրդք անանկ ատեն փոփոխութեան առնուեցան, երբ քրիստոնէից շատ հին գրուածոց եւ բնաւ նախկին եկեղեցւոյ հանգամանաց վրայ՝ խաւարի մէջ կեցած ըլլալով նոր լոյս դեռ աս մարդկան ծագած չէր:*[1] *Ոչ կարծեօք, այլ դրականապէս գիտենք՝ որ Հայք եւս ան ատեն անոնցմէ փորձուած եւ քննուած են առանձնաբար:*

*Երկերիւր տարիէ աւելի է որ Հայոց պատարագն աշխարհք քալած է. տասն անգամի չափ լատիներէն թարգմանուած հրապարակաւ եւ առանձնակի, քանի մ'անգամ գաղղիերէն, իտալերէն, նոյնպէս գերմաներէն, անգղիերէն, մինչեւ յունարէն իսկ դարձած վերջապէս (ըստ էական մասին՝ Աթէնքի* Εὐαγγελικὸς κῆρυξ *պարբերականին մէջ):*[2]

*Շատ հին Հայերը չէ, սակայն եթէ նորերը հարցուիս՝ զանի մինչեւ իրենց Լուսաւորիչը կը հանեն. իբրեւ թէ շատ բան իր մատամբը գրած է Սուրբը: Ասանկով կը մտածեն անշուշտ յարգ մը տալ, ուր անիկայ իր յարգը, ինչպէս պիտ'որ տեսնենք, իր ծննդեամբն ունի, իրեն պատմութեամբը: Աւելի նորերս Ռուսաստանի Հայք են՝ որ աս ենթադրութիւնը կը հաշակեն: 1857ին, ինչպէս կ'երեւայ՝ իրենց Մսեր վարժապետին նիւթ տալովը՝ գաղղիերէն գիրք մը վարձելով՝ Հայոց պատարագը, առանց ընդ բանս ինչ ածելոյ, կը վերագրուի իբրեւ Սրբոյն Գրիգորի պատարագ, եւ կը հիւսուի մանրամասն անոր պատմութիւնը: Այսպէս էջ* 175, (Hist. Dogm. Traditions et Liturgie de l'église armén. orientale, par *Edouard Dulaurier.*) *"Արեւելեան Հայոց եկեղեցին մի միայն պատարագ մ'ունի, որուն ծագումը կ'ելլէ մինչեւ առաջին դար քրիստոնէութեան. եւ որն որ Երուսաղէմի պատարագէն առնուած է. Լուսաւորիչ այլեւայլ աղօթքներ անոր աւելցուց, եւ Ներսէս Հանգանակը՝ քանի մը խօսքերու յաւելուածով թէ 'Իսկ մեք փառաւորեսցուք..., զորոնք քահանայն համ-*

---

[1] *Cod. lit.* (IV, p. 3) „In confessum venit quod cum omnibus bonis maxime deploramus: Sacra ea aetate esse reformata, qua antiquissimis Christianorum literis atque omnino primaevae ecclesiae imagini, in tenebris iacentibus, nova lux nondum affulserit."

[2] Աբպայ. Դանիէլ (*Cod. lit.* IV, p. 451) գիւտ մ'ըրած կը համարի: Neale (անգղիացի բողոքական) պատարագաց վրայ գրած գրքի մը մէջ, անվստահ ըլլալով Աւետիքեանցի իտալական՝ եւ Շթէքքի գերմանական թարգմանութեանց վրայ, վասն զի կաթոլիկեայ Հայոց գործածած պատարագին վրայէն ըրեր են, ռուսերէն թարգմանութիւն մը ձեռքը կ'անցնի՝ զորն որ Հայոց եպիսկոպոս մը՝ Արղութինսքի Տոլկորուքի՝ մայրենեօք հայ, Ռուսաստան ըրեր է. եւ անիկայ անգղիերէն կ'ընէ: Դանիէլ աս անգղիերէնը լատիներէնի կը դարձընէ իբրեւ բուն աղբիւրէն եկած աղաւաղ. վայոյն թարգմանութիւն: Զարմանալին եւ միանգամայն ցաւալին ան է որ հիմա Գերմանիա աս վերջինն իբրեւ վաւերականագոյն բնագիրը բանուելով, ամենայն ոք ուղղակի ան թարգմանութեան կը դիմէ՝ Հայոց պատարագին համար պէտք եղած ատեն, նոյն իսկ Հոֆֆէի, Փրոփսթի, Պիքքէլի եւ Ցրանցի պէս մարդիկ: Սակայն մեր ակզբնագիրն աս վերոյիշեալ թարգմանութեանց շրջանէն շատ բան կրած է. բազմաթիւ են անճշգութիւնք եւ այլայլութիւնք:

գիտապէս կը զրուցէ ։ „ Եւ ինչպէս ուրիշ տեղ մը կը ծանուցուի, “նորէն նայուած եւ աւելցուած է նոյն պատարագը սուրբ Հայրապետաց եւ վարդապետաց, Սահակայ եւ Մեսրոպայ ձեռօք ։ „[1] Առանց պատճառի չեն աս մանրամասն տեղեկութիւնք՝ որ կը տրուին ։ Հոգ մը կը ստիպէ մերազնեանները. հոն շատ բաներու՝ ուստի իրենց պատարագին ալ անշուշտ, աս՝ անծանօթ ծագում ունեցող նուիրագործութեան՝ ծուռ կը նայուի ան երկիրը ուր Աստուածաբանք կը տիրեն Մուրատիէֆի պէս՝ որն որ Ոսկեբերանի անուամբ Բիւզանդեան ձեւերուն համար վճիռ կու տայ՝ թէ “Անոնք ալ աստուածային պաշտաման մարդկային եղանակաւ մի միայն կարելի ձեւն է ծայր ու ծագ. ալ անկէ կատարեալ բան կարելի չէ ։ „

Բայց այսպիսի պիտոյից դէմ՝ սուտ ու փուտ ենթադրութեանց պէտք չենք դիմել, մանաւանդ՝ եթէ, ինչպէս ըսինք, հետզհետէ իմանանք աս մեր պատարագին ճշմարիտ արժանապատուութիւնը ։ Անոր համար ալ կը համարինք թէ առանց Աստուծոյ տնօրէնութեան եղած չէ որ մեր ողջամիտ Հայքը տարակուսած չեն ասիկայ պահելու՝ տաճարներն ու սեղանները թող տալու ատեններն, “Ցեղանեղն Իսրայէլի յԵգիպտոսէ. „ վասն զի զգացած էին աս բնագրին մէջ Հոգւոյ Աստուծոյ շարժում մը, թէպէտ առձեռն էր անոնց՝ հայերէն պատարագամատուցաց հոյլ մը՝ նոյն իսկ Հռոմէականն՝ հայերէն լեզուաւ ։ Նոքէն ընդօրինակութեանց կամայական տարբերութիւնք, տպագրութիւնք ոչ-հաւատակից եղբարց ձեռօք, առանձնական կարծիք եւ կասկածք, եւ չափազանցութիւնք ի մի կամ ի միւս կողմն այլեւայլ կէտի նկատմամբ, հարկաւոր կ՚ընեն ասկէ 200 տարի առաջ որ ունենան մեր Հայք կանոն եւ սահման մը յայսմ ։ Այսպիսի կանոն (norma) մը Հռոմ հոգացուեցաւ, որն որ՝ ինք իրեն կ՚իմացուի՝ ամէն մոլորութեան կասկածը փարատելով՝ բնագիրն իր կարմրագրովքը կը թողուր ի գործածութեան ։ Եթէ քանի մը մանր բաներ աւելի մեր ճաշակին համաձայն կրնային ըլլալ հիմայ, անիկայ մեր յանցանքը կը մնայ ։ Ի՞նչ աստիճան անկման ու վատթարութեան մէջ էր ան ատեն մեր հայկական դպրութիւնը՝ որո՜ւն ծանօթ չէ. սակայն աս տարրէն մարդիկ էին որ պիտի խօսէին ու գործէին՝ երբ որ սուրբ Աթոռն ուրիշ դիտում չունէր, բայց եթէ իր փափուկ նուիրագործական օրէնքներն ազատել, զորոնք՝ իրեն գրոց համար ալ՝ թէպէտ մոլորութիւն չպարունակեն, կը պահէ ժամանակին եւ ժողովրդեան յարմարապէս զգուշանալով ։[2] Թէ ինչ պիտ՚որ ըլլար մեր բնագիրը՝ եթէ Հռոմ իր զգուշաւորութիւնը թէ՛ լեզուին եւ թէ՛ բնագրին խնայելու համար չընէր, ան այսօր շատ

[1] Շատոնց է որ Հայք. ինք իրեն մնալով. չի տարակուսիր ասոր ։ Ռոյնալդոս Տարեգր. առ ամն 1564 (Տրիդ. ժողովոյն ատեն) կը պատմէ թէ Հայոց պատրիարքը պատգամաւոր մը Հռոմ խրկեց դաւանութեամբ մը մէկտեղ՝ որուն մէջ կ՚ըսուէր. “Ունինք պատարագ՝ զորն որ Ս. Գր. Լուսաւորիչ առաջին հայրապետը մեզի գրեց։ „

[2] Կրցան առաջնորդք քանի մը լեզուական անպատեհութեանց դարման ընել խոհեմութեամբ. վասն զի բաւական զգուշացած էր Ս. Ժողովքը իր վճռոյն մէջ յայտնելու՝ որ իր կամքը լեզուական օրէնք տալ չէր։

*յայտնի է։ Մէկ մեծ հայ ուղղափառ գաւառի մը (Լեհաստանի) վստահութեան մարդը՝[1] ամբողջ բնագիրը կը սրբագրէ, գրեթէ ուրիշ մը կ՚ընէ, իբրեւ թէ իմաստին աւելի կապ եւ ամբողջութիւն կու տայ, եւ ասանկ կ՚առաջարկուի ընդունուիլ։ Կեցած է խոշոր հատոր ձեռագիր՝[2] ան իրաց հմուտ Կարդինալ Բոնայէ անշուշտ նայուած եւ Ս. Ժողովքէն աս վիճակին մէջ ետ մղուած։[3] Այսպէս կը պահուի ամբողջ, քահանայապետներէ դրուատեալ, հեղինակներէ հաճութեամբ տեսնուած աս Խորհրդամատոյցը։ Անոր համար, որչափ լաւագոյն կ՚ըլլայ՝ եթէ առենօք մեր կողմանէ պակսած եւ հիմայ մեզմէ ուղղուած սատարութիւնը անկեղծութեամբ մատուցուի՝ ուր պէտք է, քան թէ զինչպէտ խօսուի։*

*Աս Հայոց պատարագը, ինչպէս արդէն լսեցինք, մի միայն է ցայսօր. գրեթէ անլուր է ուրիշ Հայոց պատարագի վրայ խօսք։ Թէպէտ եւ ըլլայ Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի քով* 10րդ *դարուն՝ Հայոց ուրիշ պատարագաց խօսք մը, սակայն կամ անիմանալի էր եւ կամ իր հաւանականութեան մէջ կը մնար անհոգութեամբ։ Բայց երբ որ, արդէն բաւական տարիներ են, հայերէն լեզուի վրայ սուր եւ նուրբ դատողութիւն* (criterium) *մը երեւան ելաւ՝ որն որ հնագոյնը նորագոյնէն մինչեւ ի բառ եւ ի գիր բաժնելու եւ անխաբ դատաստանով շատ սուտ՝ իրաւէն որոշելու սահմանուած է, ալ աս դպրոցին հետեւողքն ոչ երբեք կրնային հաւատալ որ հիմայ ձեռքերնին ունեցած պատարագամատոյցը Հայոց առաջին եւ մի միայն Խորհրդամատոյցն եղած ըլլայ, ըսէին ինչ որ կ՚ուզէին՝ Աւգերեան եւ Աւետիքեան։[4] Կը փնտռէին ան դպրոցին քննասէրքն "Հնոց*

1 (Բարսեղ Բարսեղեան։) Կը կենան (Վիեննա) նամակաց օրինակներ Լեմբերգէ Հռոմ գրուած՝ զինք աստղները բարձրացընելով. կարծես թէ երանելին Բարսեղ՝ պատարագի կարգադրիչն ան է, փութացընելով ի գործ։

2 Ի Թանգարանին Museo Borgiano.

3 Խօսք կ՚ըլլայ Հռոմ եղած ուրիշ տպագրութեան մը վրայ, զորն որ Ս. Ժողովքը հոգացած, բայց ետքը արդար կասկածի համար բնաջինջ ըրած ըլլայ օրինակները, տեսնելով՝ որ Երեքօրհնեան երգը սանկ տպուած է. "Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ Ի— այլն։„

4 Աւետիքեան (Sulle correz. fatte ai libri eccl. arm. Venezia 1869. Art. 4.) խօսելով Հայոց պատարագին յարգելի հնութեան վրայ՝ կը հաստատէ թէ 4րդ դարու վերջերը եւ 5րդին սկիզբները շինուեցաւ, երբ որ ուրիշ եկեղեցեաց ալ պատարագք գրուեցան։

"Սակայն մենք, կ՚ըսէ, ունինք աւելի ճիշդ տեղեկութիւններ մեր ազգային աղբիւրներէն եւ մանաւորապէս Տարսոնի Արքեպիսկոպոսէն Ներսէսէ Լամբրոնացւոյ՝ 12րդ դարուն։ Յայտնի կ՚երեւայ ան եպիսկոպոսին խօսքերէն որ պատարագի կարգաւորութիւն մը ունէին Հայք հայերէն թարգմանած 4րդ դարէ հետէ, եւ սակայ Գրիգորի Լուսաւորչի առեն եւ քիչ մը ետքը՝ այս ինքն Ս. Ներսէսի առեն՝ որն որ Ոսկեբերանէն առաջ ծաղկեցաւ։ Անկէ ետքը, այս ինքն 5րդ դարու սկիզբները մեր պատարագը լաւագոյն կարգի բերուեցաւ եւ ճոխացուեցաւ շատ բաներով՝ որոնք Յովհ. Ոսկեբերանի պատարագէն են, ուստի՝ աս երկուքին մէջ գտնուած մեծ նմանութիւնը. մանաւանդ ան մասին մէջ որ Երախայից պատարագ կ՚ըսուի։„

"Հիմա գալով մեր պատարագին, մխիթարութեամբ կը տեսնենք որ Հայոց պատարագին կարգն ու արարողութիւնը պահուեցաւ կատարեալ ընդ այնչափ դարս ազգին մէջ անփոփոխ։ Յայսմ աստուածային նախախնամութեան օգնութենէն զատ՝ կը փայլի նոյն ազգին մեծ զգուշաւորութիւնն եւ նախանձախնդրութիւնը զանոնք անայլայլելի պահելու։„

Յայտնի է որ աս խօսքերն զմեզ չեն գոհ ըներ այսօր։

պատարագ„ ըլլալու բան մը։ Ան դի աս դի աչք պտըտցընելէն ետքը գրեթէ յուսահատուած էր ասոր վրայ։ Մէկ պատարագէն աւելի՝ պատարագի անուամբ վերջին առենները ձեռագիրներ երեւցան՝ որոնք մեր ծանօթ պատարագէն — Ոսկեբերանէն, Բարսեղէն — առնուած՝ վերջնոց ըստ կամի խմբագրութիւններ էին։

Աս վերջիններուն կարգէն ենթադրելով էր որ երբ 1867ին Փարիզ ասանկ հայերէն մատենի մը անունը կարդացինք ցանկի մէջ. “Պատարագք Աթանասի, Գրիգորի Լուսաւորչի, Սահակայ, Բարսղի, Ոսկեբերանի, Գրիգորի Աստուածաբանի, Կիւրղի Աղեքսանդրու հայրապետի, Ս. Յակոբայ Առաքելոյ, Իգնատիոսի.„ շատ հոգ չունեցանք զանոնք տեսնելու ան ատեն կայսերական մատենադարանին մէջ. գոհ եղանք առ ժամն մատենին անունն ու թիւը մեզի նշանակելով. համրուած օրերնիս (20 օր) ուրիշ հարկաւորներու սպառեցինք։ Բայց աս անտեսութիւնը շատ եղաւ մեզի թէ ժամանակաւ եւ թէ պլովք։ Հազիւ երկու լեցուն տարի ետքը դիպուածով յիշեալ մատենէն կտոր մը (15 տող) ընդօրինակուած կարդալով՝ արթնցանք։ Սահակայ պատարագին մէկ փոքր կտորն էր. բայց ասոր կէսն ալ բաւական էր որ որոշենք՝ թէ ասիկայ մեր Սահակայ չի կրնար ըլլալ, չի հնչեր ան ճըղուէնը (լեզուն). բայց արդէն յեղընգանէ առիւծ կը գուշակուէր։ Կ'եռայինք աս պատարագը տեսնելու. կ'ենթադրէինք արդէն Ս. Կիւրղի Երուսաղէմի հայրապետին (իրեն խորհրդածական Կոչման ընծայութեան գրոց մէջ՝ 4րդ դարուն) պատարագն ընդ հուպ ձեռք բերելու անոր Նախերգանին խօսքերը յիշելով։ Հասաւ մեզի 1870ին տարեգլխուն իբր շատ հաճոյական պարգեւ՝ ընդօրինակութիւն մը Փարիզէն՝ ազնիւ բարեկամի մը ձեռօք՝[1] որ դպրոցական քննութիւններն ան օրերը կատարած էր։

Բայց արդէն անկէ առաջ՝ Միւնխէնէն Պաւիերացւոց մայրաքաղաքին թագաւորական մատենադարանէն ձեռագիր հայերէն մատեան մը բերել տուած էինք ընդօրինակելու վախճանաւ, որուն մէջ վերջապէս նախնաբար փնտռուածը, այս ինքն մեր 5րդ դարուն մեծագոյն մասին Հայոց գործածած պատարագամատոյցն ուրախութեամբ ճանչցանք։

Սակայն մենք վերոյիշեալ բարեկամին ծանրանալ չուզելով՝ խնդրած էինք իրմէ մի եւ նոյն ատեն որ ան պատարագէն զատ մէկալ պատարագներուն միայն երեքին, այս ինքն Կիւրղի Աղեքսանդրացւոյ, Գրիգորի Աստուածաբանի եւ Իգնատիոսի Ակայի անուանց տակ եղածներէն մեզի ճաշակ մը տայ՝ անոնցմէ մէյմէկ պզտի պատառիկ ընդօրինակելով։ Ուզածնիս՝ հարկ չէ զրուցել՝ կատարուած էր փութապէս ազնիւ պատանիէն։ Աս պատառները բաւական եղան։ Առաջին երկուքը վաւերական պատարագներ էին. Իգնատիոսինը՝ որ Կիլիկեցւոց ատեն ասորերէնէ թարգմանուած բազմաթիւ պատարագաց մէկն էր, կայ Ռընոտոյի Բ. Հատորին մէջ։ Անոնց յարգը չունի։

[1] Տոքթ. Միքայէլ Հէքիմեան։

Ասոնք մեզի դարերու փլատակաց հանուածներու պէս եկան, Ոլիմպի պեղուածներու պէս։ Արհամարհելի բան ալ չեն, մեր Հայոց ձեռօք ստացուած եւ գործածուած։ Մեր ոսկի դարուն պատարագէն զատ՝ կան ուրիշ երեք մ'ալ՝ որոնց ներքուստ կու գայ կը յարի ուրիշ կողմանէ չորրորդ մ'ալ, որն որ ուրիշ բան չէ՝ բայց եթէ այսօրուան Հայոց պատարագը, ինչպէս պիտ'որ տեսնենք, ուստի 5 պատարագաց խումբ (cyclus) մը կը ժողվէ։ Շատ յայտնի բան է որ աս պատարագներու նկատմամբ մեծ բան մը յայտնուած չի սեպուիր՝ ցորչափ գրատանց մէջ քանի մը աչքընկրէ՝ խուլն ուրիշ բաներու հետ՝ կը տեսնուին կամ կ'ընդօրինակուին, որն որ քանի մը տարի կայ՝ եղած էր. այլ երբ որ ասոնց նշանակութիւնը կը զտուի, իրենց տրուած սուտ անուններէն ազատելով՝ ճշմարիտ հեղինակը եւ մեր եկեղեցական պատմութեան մէջ կարեւորութիւնը երեւան կը հանուի։

Սակայն յիշեալ երկու վաւերական պատարագներուն օրինակն ընդունիլ այնչափ դիւրին չեղաւ մեզի, եւ վերջապէս սկամայ յապաղմամբ ընդունելէն ետքը, — որովհետեւ բոլորն իբրեւ ընդօրինակութիւն յընդօրինակութենէ ստացած էինք, բունը ոչ ի Փարիզ՝ հապա ի Լիոն ըլլալով[1] — ամէն տարակուսէ ու կասկածէ զերծանելու համար հարկ էր անձամբ ձեռագիր մատեանը հոն տեսնել. յաջողեցաւ մեզի 1875ին օգնութեամբ տանն Արր. Ալահվէրտեանց՝ "որում տացէ Տէր ողորմութիւն," անցնիլ Թրիեստէն ան Իրենէոսի քաղաքը, եւ շաբաթ մը հոն դեգերելով բնագիրը տեսնել, համեմատել ունեցածնուս հետ եւ ինչ ինչ լրացընել. դարձանք՝ շնորհակալ ըլլալով ծերունի գրապետին՝ որն որ մեզի դիւրութիւն ըրաւ իւր բնակարանը ազատ ժամեր շնորհելով, եւ վերջապէս իր հարցմանցը վրայ՝ ապահովցընելով զինք թէ Ջւոկ մատեան մը կը պահէ հոս Գաղղիա։ Այլ երանի թէ սուտ ելլենք սխալենք, եւ ուրիշներուն փոյթը լաւագոյն եւ աւելի ամբողջ Օրինակ մը երեւան հանէ։ Էջմիածնի 3000 գրոց տպուած ցանկը ձայն մը չի տար. ի՞նչ արդեօք Երուսաղէմինը՝ 1000 թիւէ աւելին։

Ասոնք կը մնան մեր բոլոր 5րդ դարուն ուղղափառ Հայոց արդիւնքը, որմէ բարձրագոյնն այսօր չունի եւ ոչ մէկն արեւելեան եկեղեցիներէն. եթէ եւ աս ազնուական բնագիրներուն համեմատ բան մը թողած են երանելիք՝ ուրիշ բան չէ, բայց եթէ իրենց բաղարջ հացին նոյնպէս ազնուական սովորութիւնը։ Իրենց յաջորդները, թէպէտ ասոնցմով ըստ ամենայն արժանաւորութեան վարուած չըլլան, սա գիտցան ընել՝ որ ուրիշներուն պէս պատարագներ չզրեցին, զանոնք Ասորւոց պէս յանչափս բազմացընելով չզեխեցան եւ ոչ յաւելուածներու ինկան։ Անանկ աղէկ յայսմ իրենց առաջնորդներէն նպարակաւորուած՝ ոչ ոք մեծ կամ փոքր բան մը փորձելու համարձակեցաւ 600 տարի։

[1] Որմէ Տիւլորիէ ընդօրինակութիւն մը հա. | գացեր է Փարիզու ազգային մատենադարանին։

*Հիմակ ալ ասոնք ուրիշին են, մեր փնտռուները չեն. յունական գեղեցկութիւններ են, որոնց տէրերը՝ հիմայ գրեթէ բոլորը կորսնցուցած՝ չենք գիտեր ինչ հաճութեամբ կը տեսնեն զանոնք, թէպէտ եւ իրենց առաջին կարգի լուսաւոր արանց գրուածքներն ըլլան, ինչպէս պիտ'որ տեսնենք։ Բայց մեզի համար նոյն իսկ ա՛ն ինք զինք կը վարձատրէ՝ որ այսպէս կաթողիկէ եկեղեցւոյ Աստուծոյ զասոնք կը դարձընենք, մեր մասն ալ մէջէն ունենալով։*

*Ըսինք* 600 *տարի. վասն զի երբ որ Հայք Հայաստանէն դուրս ելան՝ գաղթական եղան, ուրիշ ճաշակ մը սկսաւ՝ որն որ երթալով սաստկութիւն առաւ, եթէ ոչ պատարագամատոյց գրելու՝ բայց թարգմանելու կամ եղածը գէթ ստուարացընելու։ Ի սկզբան քիչ մը բան։ Վկայասէր էր որ տեսաւ ամէն Բիւզանդեան շքեղութիւնները. անոր ատեն կը կարծենք սկիզբն եղած՝* 1100*ին մօտերը՝ նոր փոփոխութեանց. պիտ'որ տեսնենք սկզբնական վիճակը։ Ետքը բոլոր Ոսկեբերանի ըսուած Բիւզանդեան աղօթքները ներս թափեցան մեր պատարագին. անկէ՝ երկայն շղթայով ածանց մըն է հիմակուան ձեռքերնիս ունեցած Հայոց պատարագը, ինչպէս մի առ մի կը տեսնենք։*

---

*Չի կրնար վերջապէս մեր ընթերցողներուն մնալ անյայտ՝ որ առաջիկայիս մէջ մեր նպատակը միմիայն ուսումնական չէ, հապա միանգամայն եկեղեցական եւ հոգեկան։ Վկայ է Աստուած որ սուգ եւ մեծ տրտմութիւն է մեզի որ ոչ միայն Արեւելից մեծ մասին հետ այնչափ մերազնեայք աս ահաւոր Խորհրդոյ ծանրութեան կէտը մի միայն հոն չեն դներ՝ ուր մեր յաւիտենական քահանայապետը դրաւ իր ամենաբաւական խօսքերովը, այլ եւ ամենեւին մէկու մը չյանդգնած կերպով կը համարձակին Քրիստոսի Տեառն մերոյ Սահմանադրութիւնը կրճատելով՝ փոխանակ աչայլն գթութեանց յորդորմութիւն շարժելու՝ զգօրութեանց Տէրն ի բարկութիւն շարժել։ Անոր համար՝ կրնայ առանց օգտի ըլլալ, ինչպէս շատ անգամ, բայց ոչ աւելորդ՝ որ բոլոր գրուածոյս մէջ լեզուն հոն երթայ ստէպ՝ ուր ցաւը կը կանչէ։*



## Ա.

# ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

---

### 1.

*Օրինակեալ պատարագ. — Պասեք:*

"Յառաջագոյն քան զտօնն Զատկի գիտաց Յիսուս, կ'ըսէ Աւետարանագիրը,[1] թէ հասեալ է ժամ նորա՝ զի փոխեսցի յաշխարհէ աստի առ Հայր, սիրեաց զիւրսն՝ որ յաշխարհի աստ էին, ի սպառ սիրեաց զնոսա:" "Քրիստոսի նոյն անհուն սիրոյն գործն էր որ, զհին պասեքը կատարելէն ետեւ, զոր ի յիշատակ իւրենց ելքին յԵգիպտոսէ կը զենուր բազմութիւն որդւոցն Իսրայէլի, նոր կարգեց պասեք ինք զինքն՝ որ զենուի յեկեղեցւոյ քահանայից ձեռամբ տեսանելի նշաններով ի յիշատակ իւր անցման յաշխարհէ աստի առ Հայր, երբ արեանը հեղմամբ զմեզ գնեց, եւ փրկեց յիշխանութենէ խաւարի, եւ անցոյց զմեզ յիւր թագաւորութիւնն:"[2]

Արդ որովհետեւ Պասեքի (Զատկի) ընթրեաց մը վրայ էր՝ որ թողուց մեր Փրկիչը զոհ մշտնջենաւոր իր եկեղեցւոյն եւ ամէն իրեններուն կերակուր կենդանարար՝ "զի զկեանս ունիցին, եւ առաւել եւս ունիցին," պահեց չէ թէ մինակ ինչ որ յօրինաց եւ ի մարգարէից առ այն սեղան սահմանուած էր,[3] հապա չի կրնար տարակուսիլ որ իրեն ատենն արժած մասնաւոր արարողութիւնները՝ զորոնք իւրաքանչիւր տանուտէր նոյն սեղանին վրայ կը պահէր, ինքն ալ չարհամարհեց: Ուստի ասոնց ուսումը կրնայ լաւագոյն իմացում մը տալ Վերնատունը գործուածներուն: Անոր համար է որ աս մասնաւոր հրէական արարողութեանց մտադիր եղած են նորագոյն ատեններս մատենագիրք:

Լսենք ասոնցմէ մէկուն աս արարողութեանց համառօտութիւնը (Թէոդ. Փրանց, Վայրկեան սրբագործ. էջ 25):

Ինչպէս Մովսիսական մատեանը կը սորվեցընէ, պասեքի կերակուրը կատարուեցաւ ի յիշատակ զարմանալի անցից մահաբեր հրեշտակին եւ ազատութեան յեգիպտական ծառայութենէ: Բայց թէ ինչ կերպով պիտ'որ կատարուէր, այս ինքն թէ ինչ ծէս պիտ'որ պահուէր, այնչափ մանր մեզի չի սորվե-

---

[1] Յովհ. ԺԳ. 1:

[2] Տրիդենտ. սիւնհոդ. Նիստ 22. Գլ. Ա:

[3] Մատթ. ԻԶ. 17. — Մարկ. ԺԴ. 12—24. — Ղուկ. ԻԲ. 7—17:

ցընէր, որչափ կ'առատանայ Պասեքա-Հագգադա,[1] որն որ Հրէից պասեքին համար ծիսարան մըն է որ ըստ էական մասին մինչեւ Գրոց սրբոց ժամանակը կը հասնի, որուն կը յարի Միշնա Քրիստոսէ ետքը 2րդ դարուն վերջերը Ռաբբի Յուդա Հակկադոշէն շարադրեալ, եւ Տոսեֆթա ըսուած գրութիւնը՝ որն որ զՄիշնա կ'ամբողջացնէ եւ յիշեալ Ռաբբի Յուդայի աշակերտներէն հաւաքուած աւանդութիւններ կը բովանդակէ։

Գառնը՝ որն որ Զատկի ընթրեաց առեն պիտ'որ ուտուէր, տաճարին մէջ կը զենուէր։ Նիսան ամսոյն 14ին կէսօրէն ետքը իբրեւ ժամը 2ին, ամէն տանուտէր կամ անոր փոխանորդը իր գառնը ի սրահ տաճարին պիտ'որ տանէր ու զենուր, երբ որ կարգն իրեն կու գար, ներկայութեամբ քահանայից՝ որոնք ոսկի եւ արծաթ զոհարաններով մօտ կեցած, արիւնը կ'առնէին սեղանին վրայ թափելու համար. անմիջապէս գառնը տաճարին մէջ մորթուելէն ետքը պարարտ մասունքը կ'այրէին սեղանին վրայ։

Սա դժուարութիւնը լուծելու համար թէ ուստի պիտ'որ առնէին Յիսուսի աշակերտք ընթրեաց համար օրինական գառնը՝ եթէ Հրեայք այն տարին Նիսանի 15ին զատիկ բռնեցին, կ'ըսենք հոս անմիջապէս թէ կ'ըլլային դէպքեր՝ որ նաեւ տաճարէն դուրս զատկի գառնը կրնար զենուիլ, այնպէս որ կրնար զատիկ ուտել ուզող խումբ մը Երուսաղէմ տան մը մէջ ալ ընել եւ կամ տօնական զոհով մը շատանալ՝ որն որ Նիսան ամսոյ 14ին առտուանից իբրեւ զոհ խաղաղական մատուցուած էր։[2]

Իրիկուան դէմ՝ տաճարին մէջ զենեալ գառնը, (ինչպէս նաեւ հաւեղինաց եւ երինջոց միսը՝ եթէ այսպիսիք պատարագուած ըլլային), զոհի մասն այրելէն ետքը տուն կը բերուէր, եւ ինչպէս կանոնաւորուած էր՝ կը պատրաստուէր։[3]

Զատկի ընթրեաց համար կարեւոր էր նաեւ անխմոր (բաղարջ) հաց՝ ի յիշատակ փութանակի ելից յԵգիպտոսէ, — այլեւայլ դառն եւ ուրիշ կանաչեղէնք՝ ի յիշատակ խիստ բախտին՝ զորն որ Իսրայելի որդիք ունեցան, երբ որ հոն բնակեցան, — պնակ մը քացախով՝ թաթխելու համար, — Քարօսէթ՝ որն որ տեսակ մը անուշեղէն էր, կը շինուէր ընկուզէ՝ նուշէ՝ խնձորէ՝ դարիճենիկէ, մէջը գինւով եփուած թուզեր եւ սոր նման միրգեր դնելով, եւ ձեւուած աղիւսոյ մը ձեւով՝ կարմրկեկ գունով՝ ի յիշատակ տաժանական աշխատութեանց՝ գլխաւորաբար աղիւսարկին՝ յԵգիպտոս։ Վերջապէս պիտ'որ գտնուէր գինի, եւ գոնէ չորս բաժակ, նաեւ ամէնէն աղքատները, ընթրեաց վրայ պիտ'որ խմէին՝ վերաբերելով չորեքպատիկ խոստման, այս ինքն հանելոյ, ազատելոյ, փրկելոյ եւ ընդունելոյ ի ժողովուրդ Աստուծոյ։ (Ելից, Զ. 6։)

Ամէն բան այսպէս պատրաստուած՝ կը սկսէր ընթրիքը, որուն մասնակից կ'ըլլային շատ անգամ այլեւայլ ընտանիք, սակայն ոչ աւելի քան զքսան եւ ոչ պակաս քան զտասն անձինք։[4] Ընթրեաց զանազան արարողութիւնները լաւագոյն տեսնելու համար աղէկ կ'ընենք, եթէ առաջնորդ բռնենք մեզի չորս արարողական բաժակները։

---

[1] Եբրայեցերէն՝ գերմանական թարգմանութեամբ. Լիփսիա, 1843։

[2] Հոգլու. Վասն խորհրդոյ Գոհութեան. Գլ. Ա. յօդ. Բ.

[3] Միշնա, Գլ. Ե.

[4] Փլաւիոս Յովսեպոս, Վասն հրէական պատերազմին. Գիրք Է. գլ. 17։

Նախ եւ առաջ բոլոր սեղանակիցք կը լուան ձեռքերնին, ինչպէս որ ամէն սեղանի կ՚ըլլայ։ Ասոր վրայ կ՚աղօթէր տանուտէրն ամէնուն համար, եւ կը գոհանար Աստուծոյ որ աս տօնը պարգեւեց։ Անկէ ետքը՝

Առաջին բաժակը կը լեցուէր, այնպէս որ չորսին երեք մասը գինի՝ եւ մէկ մասը ջուր ըլլայ, տանուտէրը կ՚օրհնէր զանիկայ, եւ գոհանալով վասն բերոյ որթոյ՝ նախ ինք եւ ետքն ամէն սեղանակից կարգաւ կը խմէր։

Ապա տանուտէրը միայն կը լուար ձեռուըները եւ սեղանին կը մօտենար ու կ՚օրհնէր կերակուրը, կ՚առնուր լեղի չեղած կանաչեղէններէն կը թաթխէր զանոնք քացախին մէջ եւ կ՚ուտէր ձիթապտղոյ մը չափ. նոյնը կ՚ընէին ամէն սեղանակիցք։ Քանի մը կտորներ յՕրհնաց կարդալէն ետքը՝[2]

Երկրորդ բաժակը կը լեցուէր, եւ որդի տանն կամ երբեմն սեղանակիցներէն կրտսերագոյն մը կը հարցընէր տանուտիրոջ թէ ի՞նչ կը նշանակէ աս ամէնը՝[3] աս խօսքերով. Ինչո՞ւ աս իրիկունը բոլոր մէկալ իրիկուններէն տարբեր է։ Վասն զի ուրիշ իրիկուն կ՚ուտենք թէ խմորեալ եւ թէ անխմոր հաց, իսկ աս իրիկուն՝ միայն անխմոր. ուրիշ իրիկուններ՝ ուրիշ բանջարեղէններ կ՚ուտէինք, աս իրիկուն՝ լեղի բանջարեղէններ. ամէն իրիկուն կ՚ուտենք քացախաթուրմ եւ եփեալ միս, աս իրիկուն՝ միայն քացախաթուրմ. ուրիշ իրիկուն սովորութիւն չունինք եւ ոչ անգամ մը թաթխելու, իսկ աս իրիկուն՝ երկու անգամ կը թաթխենք (քացախ եւ քարոսէթ). ամէն իրիկուն կ՚ուտենք երբեմն նստելով երբեմն բազմելով, աս իրիկուն՝ միայն բազմելով։

Տանուտէրն ասոր վերաբերելով Ելից ԺԲ. 26 եւ Երկր. Օրինաց Զ. 20, կը մեկնէ տօնին նշանակութիւնը եւ կ՚ընթեռնու Զատկի ծիսարանը՝ որն որ աս խօսքերով կը սկսէր. Մենք ծառայք էինք Փարաւոնի, բայց Յաւիտենականն, մեր Աստուածն զմեզ կորզեց հանեց։[4]

Երբ որ կը մեկնէր նշանակական բաները, այս ինքն զատկին գառը, բաղարջ հացը եւ դառն բանջարեղէնները, զասոնք մէկիկ մէկիկ վեր կ՚ամբառնար, նաեւ բաժակին նոյնը կ՚ընէր, եւ առ այս կ՚ըսէր. “Ասոր համար, այս ինքն յԵգիպտոսէ ազատութեան համար, պարտական ենք գոհանալու, օրհնելու, գովելու, մեծացընելու, բարձրացընելու, փառաւորելու, օրհնութիւն կարդալու, վերացընելու, հռչակելու զԱնիկայ՝ որն որ մեր հարցը համար եւ մեր ամէնուս համար աս ամէն իրերն ըրաւ. ան զմեզ բերաւ ի ծառայութենէ յազատութիւն, ի տառապանաց յուրախութիւն, ի սգոյ ի տօնս տարեկանի, ի խաւարէ ի լոյս մեծ, եւ ի գերութենէ ի փրկութիւն։ Վասն այսորիկ երգեսցուք նմա երգ նոր ալէլուիա։„

Անմիջապէս ասոր ետեւէն կ՚ըսէր զՀալէլ, եւ անոր առաջին երկու սաղմոսները (ՃԺԲ մինչեւ ՃԺԳ, 8 ըստ Թուոյ Վուլկաթայի) կ՚երգեցուէին բոլոր ռազմութենէն։

Ետքը կ՚օրհնէր տանուտէրն արդէն լեցուած երրորդ բաժակը՝ որն որ ան ատեն կը խմուէր։

Միւսանգամ կը լուար տանուտէրը ձեռուըները. երկու բաղարջ հաց կ՚առնուր, անոնցմէ մէկը երկու մաս կը բեկանէր, եւ աս երկու բեկեալ կտորները ամբողջին տակը կը դնէր եւ երկուքը քովէ քով բռնած դէպ ի վեր կ՚ամ-

1 Սովորաբար՝ կարմիր։
2 Հալէլ։
3 Ելից. ԺԲ. [illegible]
4 Պասեքի ծիսարան, էջ 1—15։

բառնար. կ'ըսէր օրհնութիւն մը վրան, կ'առնուր բանջար լեղի, կը թաթխէր ի քարոսէթ, կ'ուտէր եւ կը բաշխէր անկէ (հացէն եւ բանջարէն)։

Անկէ ետքը կը սկսէր բուն ընթրեաց ժամանակը, երբ ամէն սեղանակիցք կը բազմէին ի սեղան։ Իւրաքանչիւր ոք կ'ուտէր ըստ հաճոյս զոհեալ մսէն, գառնէն, բաղարջ հացերէն՝ դառն կանաչեղէններով։ Թէ ղասոնք եւ թէ բաղարջը միշտ չկերած նախ քարոսէթի մէջ կը թաթխէին։

Սակայն իբրեւ վերջին պատառ՝ ամէն մէկը պատառիկ մը գառնէն պիտ'որ ուտէր, գոնէ ձիթապտղոյ մը մեծութեամբ. ետքը բոլոր գիշերը չէր հրաման ուրիշ բան մ'ուտելու։

Ցետ ընթրեաց կը լուացուէին նորէն ձեռքերնին, եւ կը լեցուէր

Երրորդ բաժակը (նոյնպէս) խառնուած, որուն վրայ սովորական սեղանի օրհնութիւնը, գոհութեան աղօթք յետ ընթրեաց՝ կ'ըսուէր։ Տանուտէրն դեռ երրորդ բաժակը պատրաստելու համար չառած՝ կ'ըսէր. "Տուէք ինձի բաժակը. կ'ուզեմ Գողգոթայողո—ընկ—ն խօսիլ։" Աս աղօթքը մէկ կողմանէ գոհութեան զեգմունք է՝ սննդեան եւ ուրիշ աստուածային բարութեանց համար, եւ ուրիշ կողմանէ ալ այլեւայլ խնդրուածք Իսրայելի ժողովուրդն օրհնելու՝ Մեսիայի գալստեան համար,[1] եւ կը լեցընէր օրհնելով աս երրորդ բաժակը՝ որն որ անմիջապէս կը խմուէր։ Իսկ եւ իսկ կը լեցուէր

Չորրորդ բաժակը. եւ ետքէն ամէն ներկայ եղողները Հալէլին երկրորդ մասը կ'երգէին (Սաղմոս ՃԺԵ մինչեւ ՃԺԸ, 9 ըստ Թուոց Վուլկաթայի ՃԺԳ,—ՃԺԷ)։

Հալէլին կը յարէր Մեծ-Հալէլ ըսուածը։ Թէ Սաղմոս ՃԼԶ (ըստ Վուլկ. ՃԼԵ) առ այս կը վերաբերէր, Պիքքելի ըսածին պէս, չեղաւ երբեք հակառակութիւն։ Վերջապէս կու գար բաժակի օրհնութիւնը եւ անմիջապէս կը պարպուէր։ Ասկէ ետքը ալ հրաման չկար բան մը խմելու։ Ըթէ բաց աս չորս արարողական բաժակներէն, հինգերորդ մ'ալ կը լեցընէին, ան ատեն ՃԻ մինչեւ ՃԼԷ Սաղմոսն ալ պէտք էր երգուիլ։

Ցաճախ յիշուած () ընկ—ընեանց համար չմոռնանք ըսելու՝ որ ասոնք երբեմն ընդարձակ եւ երբեմն համառօտ ձեւով ամէն կերուածին կամ խմուածին եւ գործողութեանց ի փառս Աստուծոյ վերաբերելու համար եւ Աստուծոյ նուիրուած ըլլալու կնիք մը տպաւորած ըլլալու համար էին. անոր համար մերթ գովութիւն Աստուծոյ, մերթ գոհութիւն, մերթ պաղատանք եւ երբեմն մէկը մէկալին միացեալ կը կազմէր ձեւը։

## 2.

### Վերնատան պատարագ:

Այսպէս լեցուած են, ուզենք չուզենք, արարողական բաժակները։ Բայց մը մէկը կասկած կամ խէթ չի կրնար ունենալ՝ որ այնպիսի բան մը չէր բաժակը՝ զորն որ գիտենք թէ "յետ ընթրեացն առ" մեր Տէրը։ Ոչ առանց Հոգւոյն Քրիստոսի էր ան երրայեցին (Բ. Մակաբ. ԺԵ. 40.) որն որ կ'ըսէր. "Ով որ

[1] Աղօթից մէկուն մէջ կ'ըսուի. Ամենողորմ հաճեցի արժանի ընել զմեզ Մեսիայի օրերուն եւ հանդերձեալ կենաց աշխարհին։

գինին կը խմէ առանձին կամ ով որ ջուր կը խմէ առանձին, անարգ է. գինին ջրով խմողն աւելի կ՚ընէ անոր շնորհօք։[1]„ Արհամարհեց Տէր իր պասեքը. անարգեց իր ընթրիքը։[2] Սեղանակիցք — սուրբ Առաքեալք որոնք ոչ միայն տեսան, այլ եւ ճաշակեցին, անոնց պատմութիւնն ալ ան է. ոչ ուստեք՝ բայց եթէ աս վկաներէն կրնայ ըլլալ բոլոր հնագոյն պատարագի ձեւերուն բացայայտ պատմութիւնը՝ թէ Տէր ի գինւոյ եւ ի ջրոյ խառնեց բաժակը։ Անոր համար աս գործողութիւնն այսպէս եղած “կը հաստատէ եկեղեցի„ կ՚ըսէ Տրիդենտեան Սիւնհոդոսը, եւ նզովեալ կը հերքէ՝ ով որ զասիկայ (Լութերի հետ) “մարդկային հնարողութիւն„ եւ “Քրիստոսի Սահմանադրութեան դէմ„ կը դնէ։ Այսչափ առ այժմ Քրիստոսի Տեառն մերոյ օրինակին համար։

Այս եւ այսպիսի էր ուրեմն ընթրիքը՝ զորն որ աստուածային Փրկիչը, իր խօսքին համեմատ՝ թէ Օրէնքը լուծելու եկած չէ՝ հապա լրացընելու, կատարեց իր աշակերտներովը։ Ասիկայ կատարեց վերջին անգամ իր չարչարանաց եւ մահուան նախընթաց իրիկունը, որպէս զի ան ընթրեաց փոխանակ՝ հաստատէ շատ զարմանալի, բոլորովին մեկհատիկ, աստուածային ընթրիք մը, փոխանակ ստուերի՝ լոյս, փոխանակ օրինակին՝ լրումն. այնպէս ինք զինք իբրեւ ճշմարիտ, երկայն ատեն սպասուած զատկական գառն, հիացման մէջ եղող աշակերտներուն եւ անոնց հետ բովանդակ աշխարհի՝ իբրեւ կերակուր ընծայեց, որպէս զի ան ատեն իսկ իր ամենազօր զօրութեան եւ իմաստութեան ամէնէն բարձր հրաշիւքը՝ կատարէ անարիւն եւ խորհրդական կերպով ան զոհը, եւ զենու ան պասեքը՝ որն որ հետեւեալ օրը հոսմամբ ամենասուրբ արեան յայտնապէս ամէնուն աչքին առջեւ երկնաւոր Հօրը պիտ՚որ ընծայուէր առ ի փրկութիւն խեղճ մարդկային ազգի ի ծառայութենէ մեղաց եւ հօրն ստութեան։

Ասոր համար ոչ յանճահս ընտրեց աստուածային Իմաստութիւնն աս ամենասուրբ Խորհուրդը դնելու ան վայրկեանը՝ որ հին կտակարանաց զատկին ընթրիքը լմնցած էր. իրաւ. սակայն տանուտէրը դեռ ըստ կանոնի չէր գոցած։ Աշակերտները պէտք էին համոզուիլ որ նոր զատկական ընթրիք մը սկիզբ կ՚առնու, ինչպէս իրօք ալ ի մխիթարութիւն եւ ի փրկութիւն բոլոր աշխարհիս եղաւ՝ երբ որ Յիսուս մնացած հացերէն մէկն առաւ, գոհանալով օրհնեց եւ ըսաւ. “Առէք կերայք. Այս է մարմին իմ.„ եւ ապա, ինչպէս որ սովորութիւն էր եւ չէր առանց մասնաւոր նշանակութեան մը, յերկուս կիսեց, եւ ետքը փոքրագոյն մասնիկներու բաժնելով ամէն մէկ աշակերտաց մէյմէկ հատ տուաւ։

Ինչպէս ի փոխարկութեան հացին՝ պասեքի արարողութեան ինք զինք կապեց, այսպէս ըրաւ նաեւ բաժակին սրբագործութեան ատեն։ Առաւ բաժակը, ինչպէս տանուտէրը սովոր էր, գոհացաւ, օրհնեց եւ ըսաւ. “Արբէք ի սմանէ ամենեքեան. Այս է արիւն իմ.„ ետքը տուաւ զանիկայ աշակերտաց՝ որոնք մէկիկ մէկիկ անկէ խմեցին։

Այսպէս՝ գիտենք ուրեմն թէ ինչ առթիւ եւ ինչ արարողութեամբք սուրբ Գոհութիւնն առաջին անգամ կատարուեցաւ։

---

1 Քանի առաւել պէտք էր որ Քրիստոսի բաժակը շնորհաւոր ըլլար. կ՚ըսէ Մխիթար Աբբ. ի Մեկն. Մատթ.։

2 Իրմէ ուրիշ մէկն էր “իմաստութիւնը՝„ որն որ “Զենն զզենլիս իւր, եւ խառնեաց ի խառնելիս զգինի իւր,„ եւ առաքելով կանչեց՝ “Եկայք կերայք ի հացէ իմմէ, եւ արբէք զգինի իմ՝ զոր խառնեցի ձեզ։„ (Առակ. Թ. 2, 5։)

Չի կրնար տարակուսուիլ որ Բաժակին սրբագործութիւնը չեղաւ երկու առաջին արարողական բաժակներուն առթիւ. որովհետեւ Զատկական ծիսարանին համեմատ արդէն ընթրիքէն յառաջ կը խմուէին անոնք. իսկ Ղուկաս եւ Պօղոս Առաքեալ բացայայտ կը զրուցեն թէ գինւոյն փոխարկութիւնն ընթրիքէն ետքն եղաւ:

Շատերը կը միաբանին հացին փոխարկութեանը համար թէ ան ատեն եղաւ՝ երբ որ դադրեցան ուտելէն, բայց դեռ սեղանի ժողված էին, եւ անմիջապէս անոր վրայ՝ երրորդ բաժակին տեղ՝ բաժակին սրբագործութիւնը կատարուեցաւ, եւ ընթրեաց բոլորովին կատարումը չորրորդ բաժակն եղաւ Հալէլով մէկտեղ:

Հանէբերգ կը համարի թէ հացին սրբագործութիւնն եղած է՝ երբ որ երկրորդ բաժակը խմելէն ետքը տանուտէրը բաղարջ հացերը կը բեկանէր, կը թաթխէր, կ՚ուտէր անկէ ու կը բաշխէր ուրիշներուն: Ուրիշներն ալ գառնն ուտելէն ետքը կը դնեն: Իսկ գինւոյն համար Փրոփսթ ու Պիքքէլ, պատարագամատոյցները դիտելով, սա կարծիքն ունին թէ չորրորդ բաժակն եղած է Գոհութեան բաժակը:

Գալով թէ հացին եւ թէ գինւոյն սրբագործութեան վայրկեանին՝ եղան, նաեւ ուղղափառք, որք սորվեցուցին թէ ի վերնատան չեղաւ այնպէս՝ ինչպէս անկէ ետքն ընդ ամենայն աշխարհ սա կրկին բոլորական փոխարկութիւնն ի պատուիրանէ Քրիստոսի նոյն խօսքերովը կ՚ըլլայ, հապա հոն ինքն Տէրն ամենազօր կամքը սրբագործած եւ փոխարկած էր օրհնութեամբ կամ գոհութեամբ մը, եւ ետքը իբրեւ արդէն եղածին պարզապէս յայտարար՝ ըսաւ. «Այս է մարմին իմ — Այս է արիւն իմ», երբ որ աշակերտացը տուաւ, թէպէտ եւ անոնք աւանդեցան իրենց՝ իբրեւ անկէ ետքը սրբագործութեան ձեւ:

Յայտնի է որ ասիկայ առողջ վարդապետութեան համաձայն չէ, եւ ամէն կողմանէ կը մերժուի իբրեւ յանդուգն: Սակաւաւորք եղած են ուղղափառաց մէջ սանկ մտածողներ. բայց աւաղ որ առաւել քաջալերութիւն մ՚ասով գտնել կը համարի Արեւելք՝ աւելի եւս շեղելու վերնատան առաջին պատարագէն:

Չի համարուիր բաւական մեր յաւիտենական Քահանայապետէն իր քահանայից աւանդեալը[1] «Այս է մարմին իմ. Այս է արիւն իմ», — որոնց անանկ կապած է իր ամենազօր զօրութիւնը՝ որ մէկ անգամ վերնատան մէջ իրմէ ըսուածը՝ զօրաւոր է միշտ բովանդակապէս փոխարկելու զհաց իր ամենասուրբ մարմնոյն՝ եւ զգինի ընդ ջրոյ՝ իր ամենասուրբ արեանը, — այլ մարդկային հանճարով զրուցուած ձեւ կամ կոչում մը փոխանակելու կը բերուի: Վերնատունն եղածները՝ ըսուածներով կնքուած եղած է. մարմին եւ արիւն խորհրդականապէս բաժնելով՝ յիշատակ մահուանը:

Բայց ինչ, եթէ ըսուածներէն զատ՝ նաեւ գործուածներէն պակսին: Սակայն ասոր վրայ ետքը՝ ընդարձակօրէն:

---

[1] Կ՚ըսէ Քրիստոմ. Հաւանական. «Ինչ որ Տէրն հրամայեց ընել, չէ թէ միայն իրեն ըրածներուն, հապա նաեւ ըսածներուն պէտք է վերաբերիլ», Մատն Բ. Խնդիր 18:

## Յ.

*Առաքելոց պատարագ:*

Այսչափ վերնատան պատարագին համար։ Ի՞նչ Առաքեալք յետ այսորիկ։ Չկայ ասոնց՝ Վարդապետին վերանալէն եւ իրենք զՀոգին ընդունելէն ետքը այնպէս կարեւոր հոգ մը, ինչպէս իրենց յանձնուած աստուածային կտակը՝ որուն կերպը տեսան եւ լսեցին նախ ի վերնատան, եւ դարձեալ մանրամասնութեամբ սորվեցան մեր Փրկչէն, որն որ 40 օր շրջեցաւ իրենց հետ "ուսուցանելով վասն արքայութեան Աստուծոյ," այս ինքն վասն խորհրդոց, որոնց կենդրոն եւ աղբիւր՝ նորոց օրինաց պատարագն էր։ Կղեմէս, Պօղոսի աշակերտ եւ Պետրոսի յաջորդ, իր Ա. թղթին մէջ առ Կորնթացիս կ՚ըսէ. "Ամէն բան՝ որ Տէրը մեզի որոշ ժամերով կատարել հրամայեց, որպէս զի պատարագներն ու աստուածային պաշտաման կարգերը (προσφορὰς καὶ λειτουργίας) որոշ ժամանակներ ու ժամեր կատարուէին, եւ թէ ո՛ւր եւ որո՛ւն ձեռօք ասոնք կատարուելու են, իւր ամենասուրբ կամօքն որոշեց։ Անոնք որոնք որոշեալ ատենին իրենց պատարագը կը մատուցանեն, հաճոյ են իրեն. վասն զի քահանայապետին՝ իրեն մասնաւոր մասունք (գործողութիւնք) սեպհականուած են, քահանայից՝ իրենց սեպհական տեղին տրուած է, ղեւտականաց՝ իրենց սեպհական ծառայութիւնը սահմանուած է, եւ ժողովրդականը՝ կապուած է ժողովրդականաց համար տրուած պատուէրներուն։" Ո՞վ կրնայ այնուհետեւ տարակուսիլ թէ Առաքեալք, մասնաւորապէս Պետրոս, Քրիստոսի զկնի երթալով՝ արդէն իր Վարդապետին թելադրութեանցն եւ հրամանաց համեմատ կարգադրած էր, երբ որ առաջին հաւատացելոց խումբը "հանապազորդէր վարդապետութեան առաքելոց եւ հաղորդութեան (եւ) բեկանելոյ հացին եւ աղօթից,"[1] եւ ետքը երբ որ բազմութիւնը մեծցաւ, կը ժողվէր հանապազօր "բեկանել զհացն,"[2] եւ յետ այնորիկ Ագապը կը կատարէին. եւ ան տներէն յապագայս ելան ժողովարանք։ Երուսաղէմ եղածը ձեւացաւ ուրիշ տեղուանք ալ։ Անտիոք՝ ուր մարգարէք եւ վարդապետք էին Բառնաբաս եւ Շմաւոն, Ղուկիոս Կիւրենացի, Մանայէն դայեկորդի Հերովդի չորրորդապետի եւ Մարկոս, որոնք պաշտօն կը կատարէին Տեառն (λειτουργώντων αὐτῶν τῷ Κυρίῳ)։[3] Պօղոս առանձինն յայտնութեամբ ի Քրիստոսէ սորված՝ անկէ վերնատան մէջ եղած աստուածային Սահմանադրութիւնը կը քարոզէր ազգաց։[4]

Անկարելի է մտածել որ Առաքելոց ի Քրիստոսէ յանձնուած թելադրութիւնները մերթ այսպէս եւ մերթ այնպէս ըստ հաճոյս կատարուած ըլլան՝ չըլլալով որոշ կամք կամ ընթացք իրաց, չըլլալով τάξις εὐσχήμων, որոշ ձեւեր՝ օրհնելու, գոհանալու եւ սրբելու եւայլն։ Ասոնց նայելով՝ անընդդիմանալի ստուգութիւն մըն է՝ թէ եկեղեցւոյ խանձարուրքէն աստուածային պաշտօնը որոշ կանոններով կը կատարուէր՝ որոնք ի Քրիստոսէ եւ յԱռաքելոց յառաջ եկան։ Ուստի աս կանոններուն համեմատ՝ Առաքելոց եւ Առաքելական հարց պատարագը կամ պաշտօնը սա կը պարունակէր։

---

1 Գործ. Բ. 42։
2 Գործ. Բ. 46։
3 Գործ. ԺԳ. 1, 2։
4 Եբր. ԺԳ. 10։ — Ա. Կորնթ. ԺԱ. 20։ — Եփես. Ե. 16։ — Գործ. Ի. 7։

*Ընթերցուած ի Գրոց (Հին) Կտակարանաց,*
*Վարդապետութիւն,*
*Մատուցումն Նուիրաց*

ի պէտս Ագապաց՝ որոնք ետքը բաժնուեցան սուրբ Գոհութեան պաշտամունքէն, միայն Ագապաց սեղանին յարակից գտնուած սովորութիւնքն, այս ինքն՝

*Համբոյր խաղաղութեան,*
*Աղօթք,*
*Նրգ օրհնութեան (սաղմոսք) եւ*
*Նուիրումն: Ասոր կը հետեւէր*
*Գոհութեան աղօթքը,*[1] որուն կը յարէր
*Բուն կատարումն սրբոյ Գոհութեան,*

որն որ կ'ըսուէր “Բեկումն հացի,„ եւ միշտ աստուածային պաշտաման կեդրոնը կը կազմէր, եւ կը կայանար այն խօսքերուն կրկնութեան վրայ՝ որոնք Քրիստոսի Սահմանադրութեանն ըսուած էին։ Անկից էր նոր կտակարանաց Ձօհը: Սրբագործութենէն ետքը՝ տակաւին

*Աղօթք, (խնդրուածք.)*[2] կու գար ետքը՝
*Բաշխումն սրբոյ Հաղորդութեան ի ձեռն սարկաւագաց, եւ*
*Բոլոր հաւատացելոց կողմանէ զանիկայ ընդունիլը:*
*Աս էր առաքելական պատարագին պատկերը։*[3]

Որչափ համեմատ է ըսուածներուն՝ այն առաքելական պատարագին ստուերագիրը՝ որն որ հիմա կը հանուի ի “Հանգստենէ երանելւոյն Յովհաննու,„ գրուած առաքելական մարդէ մը 2$^{րդ}$ դարուն առաջին տարիները, բացայայտ յիշուած յՆպիփանէ, 5$^{րդ}$ դարուն կէսերը մերիններէն թարգմանուած եւ ցայսօր պահուած անապատ։ ([illegible])

Հոն “տուն„ կ'ըսուի տեղին, եւ “կիւրակէ„ օրը, որ “եղբայրք„ ժողված են։ Առաքեալն իր վարդապետութենէն ետքը կը խնդրէ “հաց,„ համառօտ բացատրութիւն բոլոր նուիրաց. կը գոհանայ ըսելով. “Զո՞ր օրհնութիւն կամ զո՞ր գոհութիւն կամ զո՞ր պատարագ (προσφορὰ) ի բեկանել (ի բեկման) հացի„ (սկզբնական առաքելական անուանակոչութիւն սրբոյ Խորհրդոյն)...։ Ասոր անշուշտ հետեւած է Քրիստոսի սահմանադրութեան պատմութիւնը՝ որն որ չի նշանակուիր հոն՝ իբրեւ ծանօթ։ “Նւ բեկեալ զհացն կարկառ նոցա, եւ ի վերայ իւրաքանչիւր եղբօր աղօթս առնելով՝ արժանի լինել շնորհացն Տեառն

---

[1] Եփես. Ե. 19. 20:

[2] Ա. Կոր. ԺԱ. 26—29:

[3] Ս. Աւգոստինոս սաանկ համապատասխանել կու տայ առաքելական ժամանակին պատարագը ուրիշ պատարագամատոյցներուն՝ որոնք իր ժամանակը կը գործածուէին. (Թղթ. ԾԹ. առ Պաւղինոս կամ Վիկտորինոս, խնդիր Ե.) հիմնելով Ա. Տիմ. Բ. գլխոյն “Աղաչեմ առնել աղօթս„ եւն բառերուն վրայ. Eligo inter his verbis hoc intelligere, quod omnis vel pene omnis frequentat ecclesia, ut precationes accipiamus dictas, quas facimus in celebratione Sacramentorum, antequam illud, quod est in Domini mensa, incipiat benedici: Orationes, cum benedicitur et sanctificatur et ad distribuendum diminuitur, quam totam petitionem fere omnis ecclesia Dominica oratione concludit. Interpellationes autem, seu ut nostri Codices habent, postulationes fiunt, cum populus benedicitur. Tunc enim Antistites velut advocati susceptos suos per manus impositionem misericordiosissimae offerunt pietati Quibus peractis et participato Sancto Sacramento, gratiarum actio cuncta concludit.

Եպիսկոպոսական օրհնութիւնը հին ատեն կ'ըլլար նախ քան զՀաղորդութիւն:

եւ սրբոյ Գոհութեան (τῆς χάριτος τοῦ Κυρίου καὶ ἁγίας Εὐχαριστίας) եւ ճաշակեալ նորա նոյնպէս, եւ առացեալ թէ եւ ինձ մասն ընդ ձեզ լիցի եւ Խաղաղութիւն Տեառն ընդ ձեզ։ Արդէն սկսուած է "Գոհութիւն" (Εὐχαριστία) անունը՝ որուն զոյգ կ'երթայ "Շնորհք Տեառն" (ἡ χάρις τοῦ Κυρίου)։ Հաւատացելոց ձեռքը կը տրուի։

Բայց չմեկնած երանելի Առաքեալներէն, կարեւոր վկայութիւն մը խընդրենք աս սիրելի աշակերտէն՝ որն որ Փրկչին լանջքին ինկաւ վերնատունը, եւ առընթեր կեցաւ Գողգոթա, թէ ո՞րպիսի բաժակ կ'ընծայեր առաքելական եկեղեցին։

Որո՞ւն ծանօթ չէ՝ թէ Յովհաննէս, ըլլայ իր աւետարանին մէջ՝ ըլլայ իր Ա. Թղթին մէջ, ատէպ նոյն ատեն ճարակող հերձուածոց դէմ կը խօսի։ Օրինակի աղագաւ. Յովհաննու Մկրտչի աշակերտաց աղանդոյն դէմ՝ որոնք զՅովհաննէս Մեսիա կը համարէին։ Աս այլեւայլ կարգի մոլորելոց մէջ ամէնն զոյգ մ'աղանդ եղած է՝ որոնց յաճախ կը դառնայ կը խօսի Առաքեալը գլխաւորաբար իր Թղթին մէջ, այս ինքն Կարծական (Δοκῆται) աղանդաւորաց՝ որոնք ճշմարիտ մարդեղութիւնը կ'ուրանային Յիսուսի, մինակ կարծեօք կամ ցնորիւք մարդ երեւցած զանիկայ կը քարոզէին։ Ուրիշ երկրորդ մըն էր Եբիոնացւոցը՝ որոնք պարզապէս մարդ եւ ոչ Աստուած՝ զանիկայ կը հաւատային, հասարակ ծնընդեամբ յառնէ եւ ի կնոջէ բարբանջելով։

Եբիոն կամ Եբիոնացիք մեծ նշանակութիւն մ'ունին մեր բաժակին համար։ Աս հրէամիտ քրիստոնեաներով է որ հանդիսապէս կ'իմանանք՝ թէ եկեղեցւոյ խանձարուրքը բաժակ մը կայ՝ որն որ ի գինւոյ եւ ի ջրոյ է։ Ասոր նշանականը (signal) իրենց հաճոյ չըլլար. ակնարկութիւն, յայտարարութիւն մըն է Աստուծոյ եւ Մարդոյն Քրիստոսի՝ զոր իրենք պարզ մարդ կը ճանչնան՝ Եբիոնացիք, եւ ըստ այնմ կը ձեւեն Խորհրդոյ բաժակը՝ մինակ ի ջրոյ։ Ի՞նչ առ այս Որդին որոտման։ Իւրեն պատմական վիճողութեամբը կը ցուցընէ որ "Մի ոմն ի զինուորաց տիգաւ խոցեաց զկողս նորա (զորն որ ոչ ոք յաւետարանչաց պատմած էր), եւ ել վաղվաղակի արիւն եւ ջուր,"[1] որոնք, Խորհրդոյ բաժակին ցուցուցածին պէս, զԱստուած եւ զՄարդ կը նշանակեն։ Յիսուս Քրիստոս եկաւ "Ոչ ջրով միայն (կ'ըսէ, որով միայն դուք զինք կ'ուզէք նշանակել,) այլ եւ արեամբ,"[2] (որուն դուք նշանակութիւնը Խորհրդէն կը խափանէք)։ Ուստի Առաքելոյն համար աս երեքը իրարու կապուած են. գինի եւ ջուր ի խորհըրդեան, — արիւն (եւ ջուր ի խաչելութեան), — աստուածութիւն եւ մարդկութիւն ի Քրիստոս։ Թէ ո՞րչափ սաստկութեամբ իր աս վկայութեան վրայ Եբիոնացւոց դէմ կը դնէ՝ յայտնի է Ա. Թղթէն։[3]

Ո՞վ չէ գիտեր թէ մի եւ նոյն սկիզբներով կը նուիրէ ու կը հաւատայ ցայսօր սուրբ եկեղեցի Աստուծոյ։ Բայց կ'արժէ որ իրերը նոյն իսկ Առաքելոյն մօտաւոր եւ Եբիոնացւոց ոչ հեռաւոր Հայրց խօսքերուն ալ դիտենք։ Գլխաւոր խնդիրներէն մէկն է. եւ ուղղերնիս ալ սուրբ Գրոց կը վերաբերի։

Ս. Եպիփան 4րդ դարուն վերջերը գրելով կ'ըսէ թէ Եբիոն՝ որն որ "լոկ մարդ կը յանդգնէր ըսելու զՓրկիչը," Պաղեստինէն անդին Ասիա եւ Հռոմ իր մոլորութիւնը տարածեց։[4] Հին աղանդաւորք իրենց վարդապետութեան հա-

[1] Յովհ. ԺԹ. 34։
[2] Ա. Յովհ. Ե. 6։
[3] Ընդ.
[4] Հերձ. Եբիոնացւոց. Գլ. 18։

մեռմամ՝ կը ձեւէին սուրբ Խորհուրդն ալ։ “Եբիոնացիք, կ՚ըսէ Կիպրացւոց եպիսկոպոսը, Խորհուրդը կը կատարեն ըստ նմանութեան սրբոց յեկեղեցւոջ, (այս ինքն՝ ինչպէս քրիստոնեայք կ՚ընեն,) տարուէ տարի, բաղարջով, իսկ Խորհրդոյն միւս մասը՝ մինակ ջրով։„[1] Չի զրուցեր սուրբ Հայրը թէ ինչ կը դիտէին ասով, թէպէտ գրածներուն ընթացքէն կ՚իմացուի, այսինքն իբրեւ յայտարարութիւն մը՝ թէ Քրիստոս մինակ մարդ է եւ ոչ միանգամայն Աստուած։ Մինչեւ 4րդ դարուն վերջերը Եբիոնի աշակերտաց ձեռօք աղանդը յաւելուածներ առած էր, սակայն աս սովորութիւնն ու անոր նշանակութիւնը սկզբնական՝ ուստի եւ Առաքելոց ժամանակէն էր. վասն զի Ս. Իրենէոս՝ որն որ Աւետարանչէն մինակ Ս. Պողիկարպոսով կը բաժնուի որ իր վարդապետն էր, նոյնը նոյնպէս գիտէ Եբիոնացւոց նկատմամբ, մի եւ նոյն ատեն սրբազան Աւետարանչին եւ Թղթագրին խօսքերուն իմաստը սքանչելապէս դուրս ցատքեցընելով։[2]

Իրենէոս գիտէ Սուրբ Եպիփանէն շատ յառաջ՝ 2րդ դարուն՝ թէ ջրով միայն առանց գինւոյ զԽորհուրդն կարծեն կատարել, ինչպէս զՄեսիա կը հաւատան Եբիոնացիք՝ մարդ առանց աստուածութեան, ըստ այսմ կ՚իմանայ եւ կը մեկնէ Յովհաննու փառաւոր վկայութիւնը երանելին Իրենէոս՝ որն որ, ինչպէս ըսինք, Պողիկարպոսի՝ Յովհաննու աշակերտին աշակերտեալ էր։

Մեր Առաքեալը՝ իր ամենավճիտ ոճոյն մէջ՝ երբ որ վիճելու կ՚ելլէ, բոլորովին բացայայտ եւ որոշ ձեւեր ունի իրեն։ Ինչպէս Յովհաննու Մկրտչի աշակերտաց դէմ՝ որոնք զՅովհաննէս Մեսիայի տեղ բռնած էին, (Յովհ. Ա. 6—8,) “Եղեւ այր մի առաքեալ յԱստուծոյ, անուն նմա Յովհաննէս. սա եկն ի վկայութիւն, զի վկայեսցէ վասն լուսոյն։ Ոչ էր նա լոյսն, այլ զի վկայեսցէ վասն լուսոյն։„ Յովհաննէս՝ (ԻԱ. 23,) սխալ ըմբռնման մը դէմ կ՚ըսէ. “Ել բանս այս յեղբարս թէ աշակերտն այն (այսինքն՝ ինքն Յովհաննէս Առաքեալ) ոչ մեռանիցի. այլ ոչ ասաց նմա Յիսուս թէ ոչ մեռանիցի, այլ՝ եթէ կամիմ զի կայցէ դա մինչեւ ես գամ, քեզ զի՞ փոյթ է։„

Ըստ ամենայնի նոյն ձեւով է որ Եբիոնացւոց դէմ կ՚ելլէ մեր Աւետարանիչը։ “Ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել՝ որոց հաւատացեն յանուն նորա. որք ոչ յարենէ եւ ոչ ի կամաց մարմնոյ եւ ոչ ի կամաց առն, այլ յԱստուծոյ ծնան։„[3] “Ուստի Եբիոնացիք, կ՚ըսէ Իրենէոս, զմիաւորութիւն Աստուծոյ ընդ մարդոյն չընդունելով՝ կը մնան հին ծննդեան խմորին մէջ, անոր համար ալ կը խոտեն կը մերժեն անոնք երկնաւոր գինւոյն խառնումը, եւ կ՚ուզեն որ մինակ ջուր աշխարհական ըլլայ (այս ինքն՝ մարդ սոսկ յերկրէ եւ ոչ միանգամայն Աստուած յերկնից), չընդունելով զԱստուած առ խառնումն իւրեանց, որոնք կը յարատեւեն ան Ադամայ վրայ՝ որն որ յաղթեցաւ, եւ չեն ուզեր իմանալ թէ Հոգին սուրբ եկաւ ի Մարիամ, եւ զօրութիւն Բարձրելոյն հովանի եղաւ անոր, անոր համար ալ ծնեալը սուրբ է եւ Որդի Բարձրելոյն՝ ամենեցուն Հօր՝ որն որ գործեց անոր մարմնաւորութիւնը եւ ցուցուց նոր ծնունդ մը, որպէս զի ինչպէս առաջին ծննդեամբ մահ ժառանգեցինք, այնպէս ալ աս ծննդեամբ կեանք ժառանգենք։„ Քիչ մը ետքը կը յաւելու. “Վասն զի Աստուծոյ ձեռքը չի թողուր երբեք զԱդամ..., անոր համար ի վախճանի ոչ ի կա-

---

[1] Անդ. Գլ. 16։

[2] Այս բնագիրը կը պակսի հոս. սակայն որ հայ թարգմանութիւնը կորսուած է. բայց ճիշդ սա տեղէն պահուած է գոնէ Լեհացւոյն Բառարանին մէջ կարգը՝ “Շարախառնութեան գինւոյն։„

[3] Յովհ. Ա. 13։

մաց մարմնոյ եւ ոչ ի կամաց առն, այլ հաճութեամբ Հօր, անոր ձեռօքը զնախաստեղծ մարդը շինեց՝ որ ըլլայ երկրորդ Ադամ ըստ պատկերի եւ ըստ նմանութեան Աստուծոյ:»

Ասոնք, ինչպէս յայտնի է, մեկնաբանութիւն (paraphrase) մըն են Առաքելոյն Աւետարանին խօսքերուն եւ մանաւանդ Ա. Թղթոյն.[1] «Ամենայն որ հաւատայ եթէ Յիսուս է Քրիստոսն (Մեսիայն), յԱստուծոյ ծնեալ է. ամենայն որ յԱստուծոյ ծնեալ է՝ յաղթէ աշխարհի: Եւ ո՞ իցէ՝ որ յաղթիցէ աշխարհի, եթէ ոչ որ հաւատայցէ թէ Յիսուս է Որդի Աստուծոյ: (Հոս Առաքեալը իր վերոյիշեալ ընդդիմախօսութեան ձեւերուն համեմատ՝ Եբիոնացւոց բացայայտ կ'ըսէ.) Սա է որ եկն ջրով[2] եւ արեամբ Յիսուս Քրիստոս. ոչ ջրով միայն, այլ ջրով եւ արեամբ:»[3] Դժուարաւ կրնար տեղի ունենալ մեր հիներէն ան ազնուական առարկութիւնը՝ զոր որ Տրուզեան սիւնհոդոսին առջեւ հանած կը տեսնենք, եթէ ունեցած ըլլային քիչ մը պատմական ծանօթութիւն Եբիոնացւոց վրայ կամ զՍ. Իրենէոս կարդային՝ որուն վերոյիշեալ գիրքն իրենց Հայք, արդէն 5րդ դարէն, թարգմանած էին:[4] Տրուզեան 33րդ կանոնէն կ'իմանանք որ Հայք 692ին Ոսկեբերանի (Մատթ. Մեկն.) խօսքը ի բանն «ի բերոյ որթոյ» որով կը մերժուի ուրիշ չար աղանդ մը այնպիսեաց՝ որոնք «ջրով վարեն ի Խորհուրդն,»[5] չիմանալով որ սուրբ Հայրը Եբիոնացւոց միայն ջուր գործածելուն համար կը գրէ, իրենց մոլորութեան նպաստ առած են: Պատմականօք միշտ մանուկ էին Հայք:

Նոյնքն եւ զանազան առթիւ եղաւ որ դրեցին չորս սուրբ գրողք Քրիստոսի Խորհրդոյն Սահմանադրութեան վրայ. — Մատթէոս ԻԶ. 26—28, Մարկոս ԻԴ. 22, 24, Ղուկաս ԻԲ. 19, 20, եւ Պաւղոս Ա. Կոր. ԺԱ. 23—26: Երեք առաջինները վերնատունը գտնուած. իսկ չորրորդն ի Քրիստոսէ մասնաւոր յայտնութեամբ սորված: Ասոնց եւ ոչ մէկն երբեք մէկալներուն ամէն ըսածը կ'ըսէ, բայց ամէնը կ'ըսեն միշտ մէկ էականը՝ որն որ է հացին եւ բաժակին վրայ Քրիստոսի արտաբերած խօսքերը, որոնք չորսին քով ալ մի եւ նոյն իմաստի կը ժողվին: Սակայն Առաքեալք թէ յառաջ եւ թէ յետոյ աղբիւր մ'եղան պատարագամատոյցներու՝ իբրեւ վկայք ի վերնատան եղածներուն: Շատ բան այսպէս մեզի անցած է՝ իրենցմէ աւանդուած: Օրինակի աղագաւ. ուստի՞ յայտնի է մեզի որ հնագոյն պատարագամատոյցք, ինչպէս Կղեմեանը, կ'ըսեն «Ամբարձ զաչս իւր առ Աստուած իւր եւ Հայր» (ἀναβλέψας πρὸς τὸν Θεὸν αὐτοῦ καὶ

---

[1] Ա. Յովհ. Ե. 1, 4:

[2] Հոս կ'աւելցնեն հայերէն Օրինակները «եւ Հոգւով,» որն որ չ'երեւար Ս. Գրոց վերաբերիլ. յոյնը չունի. Վուլկաթա չունի:

[3] Կրնայ տեսնուիլ աւր նկատմամբ նաեւ Ալլիոլիի մեկնութիւնը յայս բան Առաքելոյն:

[4] Ս. Իրենէոսի Լուգդոնի Եպիսկոպոսի «5 գիրք ընդդէմ հերձ.» 10րդ դարուն դեռ ձեռքն ունէր Գրիգ. Կթղ. (Անաւարզեցին) առ Հեթում Թագաւոր անունելթիւ վրայ գրած հմտական թղթին մէջ. աւելի 50 տարի առաջ կը կենար սա գիրքը հայերէն լեզուաւ ի Կալիցիա Լեհաստանոյ. զոր Ստ. Լեհացի կը գործածէ իր Բառարանին մէջ: Ան կ'ըսէ «առատաձայն գինւոյ խառնումն» թարգմանածնիս մեր հին թարգմանութեան մէջ «առատաձայն գինւոյ շարախառնումն» (σύμμιξις) թարգմանուած է, ինչպէս Անաւարզեցւոյն եւ Ստեփանոսի քով կը տեսնուի: Հիմայ մէջտեղը չկայ մատեանը: Ափսոս. վասն զի յունարէնը որ հիմայ ունինք, շատ տեղ պակասաւոր, հին լատիներէնը շատ տեղ մութ թարգմանուած է:

[5] «Ջրով վարեն ի Խորհուրդն» ըսել չէ՝ ջուր կը գործածեն Խորհրդեան մէջ, այլ ըստ յունականին՝ որուն անհոգաբար նայուած չ'երեւար, եւ ըստ բուն հայերէն հին թարգմանչին չ'ի նշանակեր՝ բայց եթէ (բոլոր) ի ջրոյ կ'ընեն Խորհուրդը: Ջրողք՝ Ս. Հարք Ջրաւորք (Ὑδροπαραστάται) ալ կ'անուանէին:

Πατέρα) *ընկլով՝ յառաջ քան զփոխարկութիւն, եւ հացին վրայ՝* τὸ μυστήριον τῆς καινῆς διαθήκης...: *Կամ Հռոմէական պատարագին մէջ՝* Accipiens panem in manus suas, et elevatis oculis ad te Deum et Patrem suum omnipotentem et gratias agens ... dicens: Hic est calix sanguinis mei ... aeterni sacramenti, mysterium fidei, qui pro nobis ... *Ուստի՞ "Եւ զբաժակն առեալ գինւով եւ ջրով„* (καὶ τὸ ποτήριον οἴνι καὶ ὕδατος). *Ուստի՞ գիտեն պատարագամատոյցք թէ ի վերնատան ի Քրիստոսէ ըսուած էր "Քանզի անգամ թէ ուտիցէք զհացս զայս, եւ զբաժակս ըմպիցէք, զմահ իմ պատմեսջիք, մինչեւ եկից ես:„ Մինակ Պօղոսի Առաքելոյն խօսքէն չէինք կրնար իմանալ թէ սափկայ ի Քրիստոսէ զրուցուած է:*[1]

*Արդէն 2րդ դարուն ընդ գրով առնուած կ'ենթադրուին պատարագամատոյցք եւ հալածուած գրքերէն կը համարուին. եւ ըստ ոմանց՝ այսպիսի գրուոր մ'առջեւն ունեցած կը համարուի Յուստինոս վկայ, երբ որ 165ին կայսեր իր Առաջին Պատասխանատուութիւնը կու տայ՝ որն որ մեզի ի մանաւորի կարեւոր կէտեր կը բովանդակէ, այսպէս.*

## 4.

*Առաքելական պատարագ:*

---

### Ա.

### ՅՈՒՍՏԻՆՈՍԻՆ ՆԿԱՐԱԳՐԱԾ ՊԱՏԱՐԱԳԸ[2]

*(Ի Հակառակացելոց պատարագէն):*

*Իսկ մեք յետ այսպէս լուանալոյն՝ ածեմք զայն որ հաւատացն եւ հաւանեցաւ՝ առ այնոսիկ որք եղբարքն կոչին, ուր իցեն սոքա ժողովեալք մատուցանել առ հասարակ աղօթս վասն անձանց եւ վասն լուսաւորելոցն եւ այլոցն ամենեցուն ամենայն ուրեք մտադրեալ, որպէս զի արժանաւորք եղիցուք որք զճշմարտութիւնն ուսաք՝ եւ արդեամբք եւս բարւոք քաղաքավարել եւ ի պատուիրանացն պահպանութեան գտանել:*

*Յաղօթիցն դադարեալք՝ ողջոյն տամք միմեանց համբուրիւ:*

*Յետ այսորիկ բերեալ տան գլխաւորի եղբարցն հաց եւ բաժակ ջրոյ եւ գինւոյ. եւ սորա առեալ, գովութիւն եւ փառս ամենեցունցն Հօր՝ անուամբ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ առաքէ, եւ մատուցանէ բազմօք գոհութիւն՝ զի այսմ ամենայնի արժանի եղեաք ի նմանէ: Իբրեւ նա զաղօթսն եւ զգոհացողութիւնն կատարէ, ամենայն ժողովուրդն՝ որ մօտ կայցէ, կցէ ի գովութիւնն Ամէն: Իսկ "Ամէնն„ եբրայեցւոց բարբառով "Եղիցի„ յայտ առնէ:*

---

[1] Այսպէս հնագոյն պատարագամատոյցներու մէջ՝ Յակոբայ, Մարկոսի, եւ Սերեբիանու քով պատարագամատոյց մը: Յաճախապատում ըսուած գրոց մէջ նոյնպէս՝ էջ 138. "Ըստ բանի Տեառն. Քանզի անգամ ուտիցէք ի մարմնոյ իմմէ եւ ըմպիցէք յարենէ իմմէ, զփրկչական մահուան իմոյ պատմեսջիք մինչեւ ի գալն գալստեան իմոյ յերկիր:„ Գրիգ. Նազ. ասորեւ:

[2] Յուստինոս վկայ. Աղերս Ա. (յամի իբր 165—168:)

Իսկ իբրեւ գոհասցի գլխաւորն եւ կցիցէ գովութեամբ ամենայն ժողովուրդն, որ առ մեզ Սարկաւագունքն կոչին՝ տան իւրաքանչիւր ումեք յայնցանէ որ անդ են՝ ճաշակել ի գոհացելոյ հացէն եւ ի գինւոյն եւ ի ջրոյ, եւ որք չեն անդ՝ տանին առ նոսա։ Եւ կերակուրն այն կոչի առ մեզ Գոհութիւն՝ որում ոչ այլ ոք իշխէ հաւասարել, բայց որ հաւատայն եթէ ճշմարիտ է՝ որ ի մէնջն պատմի, եւ լուացեալ է զլուացումն՝ որ վասն թողութեան մեղաց եւ ի վերստին ծնունդն է, եւ այնպէս կեցցէ՝ որպէս Քրիստոսն աւանդեաց։ Քանզի ոչ եթէ իբրեւ դոյզն ինչ հաց եւ ոչ իբրեւ դոյզն ինչ ըմպելի զայն առնումք, այլ զոր օրինակ բանիւ Աստուծոյ մարմին եղեալ Յիսուս Քրիստոս փրկիչ մեր եւ մարմին եւ արիւն վասն մերոյ փրկութեան առ, նոյնպէս եւ զկերակուրն զայն զգոհացեալն աղօթիցն բանիւ՝ որ ի նմանէ, յորմէ կերակրոյ մեր արիւն եւ մարմինք փոփոխմամբ (փոխարկութեամբ) սնանին, նորին իսկ Յիսուսի մարմին եղելոյ եւ մարմին եւ արիւն ուսաք լինել։

Զի Առաքեալք ի յիշատակարանսն՝ որ առ ի նոցանէ ի դիր հարան որ Աւետարանքն կոչին, նոյնպէս աւանդեցին պատուիրեալ նոցա Յիսուսի, առեալ նորա հաց՝ գոհանալով ասել. Զայս արարէք առ իմոյ յիշատակի, այս է՝ զմարմին իմ. եւ զբաժակն նոյնպէս առեալ եւ գոհացեալ ասել. Այս է արիւն իմ. եւ նոցա միայն աւանդեաց։ Զոր եւ ի Միթրայ խորհուրդսն ուսուցին առնել նմանելով՝ չար դեւքն. քանզի հաց եւ բաժակ ջրոյ դնի ի ձօնս նորա հանդերձ բանիւք ինչ՝ որ ի վերայ բարբառիցին. այլ կամ գիտակ էք եւ կամ ուսանել կարող էք։

Սակայն մեք յետ այսր ամենայնի միշտ զմիմեանս յիշեմք, եւ գոյաւորքս զամենեցուն կարօտելոց խնամ ունիմք. եւ ի միասին կամք հանապազ։ Եւ ի վերայ ամենայնի՝ զոր նուիրեմք, օրհնեմք զամենեցունց արարիչն ի ձեռն Որդւոյն իւրոյ Յիսուսի Քրիստոսի եւ ի ձեռն Հոգւոյն սրբոյ։

---

(Ծնրախայից են ի Հաւատացելոց պատարագէն միաձայնայն:)

Իսկ յաւուրն՝ որ անուանի Արեգական, գան ժողովին ամենեքին ի մի վայր որ ի քաղաքսն եւ որ յագարակս, եւ ընթեռնուն Առաքելոցն յիշատակարանք կամ գիրք մարգարէիցն ցոր վայր ի դէպ է։

Ապա դադարէ որ ընթեռնուն, խրատ տայ եւ թելադրէ գլխաւորն նմանող նախանձաւոր լինել ամենայն լաւութեանցն այնոցիկ։

Յետ այնորիկ յոտն կամք ամենեքին առ հասարակ եւ առաքեմք աղօթս։

Եւ որպէս վերագոյնն ասացաք, իբրեւ յաղօթիցն դադարեմք, մատուցանի հաց եւ գինի եւ ջուր, եւ գլխաւորն նոյնպէս աղօթս եւ գոհութիւնս՝

որչափ կար իցէ նմա՝ առաքէ, եւ ժողովուրդն կցելով գոհութեամբ յասելն՝ Ամէն։

Իսկ տուչութիւն եւ հաղորդութիւն ի գոհացելոց անտի առնի իւրաքանչիւր ումեք. եւ որ անդ չեն, առաքի առ նոսա ի ձեռն սարկաւագացն։

Որ ընչաւէտքն են եւ կամին, իւրաքանչիւր ըստ յօժարութեան զիւրն զոր կամի տայ. եւ որ ինչ ժողովի՝ մթերի առ գլխաւորին, եւ նա խնամ ունի որբոց եւ այրեաց եւ որոց ցաւովք եւ այլով իւիք պատճառանօք չքաւորիցին, եւ կալանաւորաց եւ օտարաց ի տար աշխարհէ եւ առ հասարակ ամենեցուն իսկ որոց պէտք ինչ են՝ հոգաբարձու լինի։

Այլ յաւուր Արեգականն զժողովսն յայն սակս առնեմք ամենեքին առ հասարակ. զի առաջին օր է՝ յորում Աստուած զխաւար եւ նիւթ մեկնեալ յարդ եւ զարդ արար. եւ Յիսուս Քրիստոս փրկիչ մեր ի նմին աւուր ի մեռելոց յարեաւ. քանզի յառաջ քան զԿրոնեան օրն խաչեցին զնա, եւ յաւուրն՝ որ յետ Կրոնեան աւուրն է, որ է Արեգականն օր, երեւեալ առաքելոց իւրոց եւ աշակերտաց, ուսոյց զայդ ամենայն՝ զոր եւ ձեզդ աւանդեցաք, զի դիտեսջիք տեսջիք։

---

Աս նկարագրութիւնը կ՚ընէ Յուստինոս փիլիսոփան՝ որն որ կը կարծուի քահանայ. որ Արեւելքէն Հռոմ եկաւ 2րդ դարուն եւ հոն արիւն թափեց. — կարծես Արեւելից ապագայ խորհուրդները գուշակելով՝ սուրբ Խորհրդեան նկատմամբ, Քրիստոսի խօսքերուն զօրութեան եւ բաժակին նկատմամբ գրածները նշանաւոր են։

Բայց մենք ասկէ զատ ուրիշ ամբողջ պատարագ կամ պատարագամատոյց մ՚ալ ունինք, — այս ինքն Առաքելոց Սահմանադրութիւնք ըսուած մատենին Ը. գրքին մէջ պահուած պատարագը՝ որն որ ամէնքը կը միաբանին գոնէ 3րդ դարուն ընծայելու՝ — չէ թէ միայն աս ըսուածներուն վկայ, այլ եւ ուրիշ պատարագաց վրայ կարեւորաց համար առաջնորդ։

Աս պատարագը շատերը համարեցան թէ իրական կերպով տեղ մը գործածուած պատարագ չըլլայ, այլ Առաքելոց անուամբ գրուած իբրեւ գաղափարական պատարագ մ՚ըլլայ. հեղինակ հեղինակէ, առանց հիմնական պատճառի, աս կարծիքն ընդունելով, ինչպէս Ատ. Դանիէլ կ՚ըսէ. բայց ալ հիմայ աս ասանկ չէ։ Այլ մանաւանդ ասոր հակառակ ծայրը կը պնդեն ոմանք։ Այս ինքն թէ ոչ գաղափարական շինութիւն մը չէ. եւ չէ թէ տեղ մը միայն գործածական էր, այլ ամէն տեղ քրիստոնեայ տիեզերքին բոլոր երից առաջին դարուց, մինչեւ ցառաքելական ժամանակ, անոր համար ալ՝ Առաքելական պատարագ, մի միայն պատարագ։ Այսպէս նորերս Գերմանիայի մէջ Փրոփստ՝ բոլոր հնութեան գրուածները, ինչպէս կ՚ըսուի, մեծ անխոնջ աշխատութեամբ եւ սրամտութեամբ քննելով կը համարի ցուցընել՝ որ ան ժամանակները ամէն տեղ ան եղած է մի միայն պատարագ, եւ ոչ ուրիշ մը։ Աս ստոյգ է ամէնուն համար (Ռընոտոյ, Տրայ, Լիւֆթ, Փրանց, Պիքէլ) այսօրուան օրս որ ամէնէն հին ունեցած պատարագնիս հիմայ աս է, եւ անոր մատուցած օգնականութիւնը

մեզի անզուգական է, եւ գիտութիւն առանց անոր չըլլար. Նախախնամութիւն մըն է. սակայն թէ մի միայն էր անիկայ, եւ թէ Առաքելոցմէ, կարծես, (զորն որ կը զգուշանայ ըսելու Փրոփստ) գրաւոր եկած ըլլայ, չեմ գիտեր թէ իր դպրոցէն կամ հետեւողներէն զատ՝ կ'ընդունուի՞, չէ նէ ասկէ առաջ շատ գիտնոց հետ ան երեք առաջին դարուն համար եկեղեցիք այլեւայլ գրաւոր պատարագներ ունեցած են՝ որոնք հիմայ մէջ տեղ չկան, ի բազմութենէ ի սակաւս ժողովելով։* Փրոփստ վերոյիշեալ "Երից առաջին դարուց պատարագ„ գործքին մէջ սանկ կ'եզրակացընէ իր երկասիրութիւնը։

"Առաջիկայ գրքին մէջ, կ'ըսէ, կեցած է ապացոյց մը — որմէ աւելին խիստ գիտութիւնը չի պահանջեր, եւ առանց ամէն բան տարակուսի տակ ձգելու՝ չի կրնար ալ պահանջել — ցուցընելու որ Յուստինոս զԱռաքելական պատարագը (ան մի միայն պատարագը) կը ճանչնայ եւ զանիկայ կը նկարէ։ Մենք ատով չենք ըսեր որ աս պատարագն ան ատեն բառ առ բառ սանկ հնչած ըլլայ, բայց իրաւամբք չի կրնար մարդ ըսել ալ որ անիկայ մինակ ըստ գլխաւոր իրին եւ ըստ էութեան՝ Յուստինոսի նկարագրածին հետ կը միաբանի։ Միաբանութիւնը կ'երթայ մինչեւ ցմանրամասնութիւն, եւ ստուգիւ շատ անգամ մինչեւ ցբառ։ Մասանց յաջորդութիւնը նոյն է. աղօթքներուն պարունակածը չէ թէ մինակ բացայայտ կ'ակնարկուի ան Պատասխանատուէն, այլ շատ անգամ անանկ նշանակուած են, որ այսօր մէկը լաւագոյն չի կրնար նշանակել։ Համառօտ ըսելու համար. Առաքելական պատարագը՝ նշանակութիւն չունեցող յաւելուածները մէկդի առնելով՝ որոնք ետքը հոն եկան, նոյնն է՝ որուն վրայ նկարագրութիւն կ'ընէ Յուստինոս։ Բայց որովհետեւ Յուստինոս 2րդ դարուն առաջին կէսին իր Պատասխանատուութիւնը գրեց, ուստի եւ պատարագն ան ատեն ընդհանուր գործածութեան մէջ էր, հարկ է անոր (աս առաջին պատարագին) ծագումն ի Հարիւրերորդ տարին վեր հանել։ Սակայն հարկաւոր չէ որ մարդ մակաբերելով միայն գտնէ. վասն զի միաբանութիւնը՝ որն որ կայ Յուստինեան եւ Իգնատիոսեան պատարագին մէջ, իրը տարակուսէ դուրս կը հանէ. նոյնպէս ան պատարագը՝ զորն որ կ'ենթադրէ "առ Դիոգնետոս„ թուղթ մը, Առաքելական պատարագին կը համապատասխանէ։ Աւելի յայտնագոյն կը խօսի Հռոմայեցի եպիսկոպոսն Կղեմէս աս պատարագին վրայ։ Անոր համար պէտք է մարդ առանց վարանման ըսել թէ ան կա՛ր աս եպիսկոպոսին ատեն. եւ եթէ Առաքելական պատարագը 2րդ դարուն սկիզբը կար, եթէ Կղեմէս Հռոմայեցին յամի 96 գործածեց, նոյնը յառաջին դար չհանել՝ ա՛լ անկէ ետքէ անգիտնական եւ համոյից գործ է։„

Ահաւասիկ այսչափ ամէնուն մտադրութիւնը իրաւամբք գրաւած պատարագ մը՝ որն որ յունարէն** եւ հայերէն առաջին անգամ մերիններուն կը հա-

---

* Նորագոյն քննութիւնք քիչ մը տարբեր արդիւնք կու տան: Ըստ Փունքի (F. X. Funk, Die Apostolischen Constitutionen. Rottenburg 1891) Առաքելական Սահմանադրութեանց Ը. գրոց սկզբան (գլ. ա. բ.) աղբիւրն է Հիպողիտեայ περὶ Χαρισμάτων գիրքը. իսկ Պատարագը (գլ. գ—ժե) Անտիոքայ եկեղեցւոյն է, որ իբր 400ին Ոսկեբերանի գրոց մէջ կը ներկայանայ մեզ, եւ աղբիւր չունի՝ ինչպէս կը կարծուէր, սուտանուն "Վարդապետութիւն Ս. Առաքելոց վասն Տնօրհաց„ եւ ո՛չ ալ "Սահմանադրութիւնք Առաքելոց վասն Ձեռնադրութեան„ գրութիւնները: Պատարագն յէակլանս առաջին երեք դարերէն է, բայց իւր խմբագրութիւնը Դ դարու կէսէն կամ "Սահմանադրութիւնք Առաքելոց„ գրութեան այժմու ձեւն առնելու ժամանակէն, որ ըստ Փունքի Ե. դարուն սկիզբն եղաւ, ուստի եւ կը պակսի Պատարագն նոյն գրոց ասորի հնագոյն խմբագրութեան մէջ (Didascalia): ՀՐՏ.

** Հեղինակին դիտաւորութիւնն էր յաջորդ

նենք Փոփոխի խօսքերուն ազդեցութեամբ։ Իրեն գտած համաձայնութեանց եւ միաբանութեանց համար կ'ըսէինք թէ հարկաւոր չէ որ աս պատարագը (զորն որ Ճշմարտապէս Առաքելական կ'անուանէ) մի միայն ըլլար, հապա կրնային նոյնպիսի շատեր ըլլալ եւ յետկանս համաձայնութենէ չզատէին։ Յուստինոսինը թէ որ բառ առ բառ կը գտնէ, մենք՝ թէ ինչպէս սխալ կարելի կ'ըլլայ, կարծենք, առանց սա հնութեան հանելու աս իրեն «Առաքելական պատարագը», բացատրելու կը ջանանք յետոյ, որչափ կրնանք։ Նաեւ բառ մեզ, ինչպէս բառ ամենայն խրագիտաց, կը մնայ մեր ցայսօր ունեցած ամենահին պատարագը «Առաքելական Սահմանադրութիւնք» ըսուած Ը. գրքին մէջ գտնուածը, այսպէս։

---

# Բ.

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆՑ Ը. ԳՐՔԻՆ ՊԱՏԱՐԱԳԸ

(1. ՍՐԲՈՑՆ ԱՆԴՐԷԻ ԱՌԱՔԵԼՈՑ ՊԱՏԱՐԱԳ ԽՐԱԽԱՑԻՑ)

*Ա. Ու ընդ այգն ընդ առաւօտն նստուցեն յաթոռ¹ ի տեղւոջ՝ որ նմին անկ իցէ, այլ եւս եպիսկոպոսք, ամենեցուն համբուրեալ զնա համբուրիւ որ ի Տէր է: Ու յետ ընթեռնլոյ Օրինացն եւ Մարգարէից եւ մերոց Թղթոց եւ Գործոց եւ Աւետարանաց, ողջոյն տացէ եկեղեցւոյն ձեռնադրեալն, եւ ասասցէ.*

Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, սէրն Աստուծոյ եւ Հօր եւ հաղորդութիւն սրբոյ Հոգւոյն ընդ ամենեսեան ընդ ձեզ։ (Բ. Կոր. ԺԳ. 13։)

*Ու ամենքին տացեն պատասխանի՝* Եւ ընդ հոգւոյդ քում։

*Բ. Ու յետ պատասխանւոյն խօսեսցի առ ժողովուրդն բան մխիթարութեան. եւ իբրեւ կատարեսցէ նա զբան վարդապետութեանն, ասեմ ես Անդրէաս՝ եղբայր Պետրոսի, զի ամենեցուն յոտն կացեալ՝ սարկաւագն ելեալ ի բարձր ինչ տեղի քարոզեսցէ.* Մի ոք յունկնդրաց, մի ոք յանհաւատից։

*Գ. Ու իբրեւ լռութիւն լիցի, ասասցէ.* Կացէք յաղօթս, երախայք։ *Ու ամենայն հաւատացեալք մատուսցեն ի վերայ նոցա աղօթս միտաւորութեամբ, եւ ասասցեն՝* Տէր ողորմեա։

*Պաշտեսցէ վասն նոցա սարկաւագն, եւ ասասցէ.*

Վասն երախայից ամենքեան աղաչեսցուք, զի բարերարն (եւ) մարդասէր լուիցէ գթութեամբ աղաչանաց նոցա եւ խնդրուածոց, եւ ընկալեալ զպաղատանս նոցա՝ օգնական լիցի նոցա, եւ տացէ նոցա զխնդրուածս սրտից նոցա յայն՝ որ օգուտն է. յայտնեսցէ նոցա զաւետարանն Օծելոյ իւրոյ, լուսաւոր արասցէ զնոսա եւ խելամուտ. խրատեսցէ զնոսա աստուածգիտութեամբ, ու-

---

պատարագը դէմ առ դէմ հրատարակել յունարէն բնագրին հետ, որ կը գտնուի ծիրանաւոր Փիթրայի գրութեան մէջ. (Տմմն. Juris Ecclesiastici Graecorum Historia et Monumenta, ed. J. B. Pitra. I. Romae, 1865, p. 393 եւն։) Որովհետեւ յաջորդ պատարագին հայերէնը նոր թարգմանութիւն մըն է՝ մեր Երգ. Հեղինակէն. աւելորդ համարեցանք յունարէն երկար բնագիրն ալ հրատարակել ի միասին: ՀՐՏ.

¹ Զեպիսկոպոս զնորոգ ձեռնադրեալ։

սուսցէ նոցա զհրամանս իւր եւ զարդարութիւնս. տնկեսցէ ի նոսա զիւր զանբիծ եւ զկեցուցիչ զերկիւղ. բացցէ զականջս սրտից նոցա, զի խորհեսցին յօրէնս նորա ի տուէ եւ ի գիշերի. եւ հաստատեսցէ զնոսա յաստուածպաշտութեան. միաւորեսցէ եւ խառնեսցէ զնոսա ի թիւ սրբոյ հօտին իւրոյ, արժանի առնելով զնոսա լուացման վերստին ծննդեան, զգեստու անապականութեան, ճշմարիտ կենացն. եւ փրկեսցէ զնոսա յամենայն ամպարշտութենէ. եւ մի տացէ տեղի օտարին հակառակ նոցա. եւ սրբեսցէ զնոսա յամենայն պղծութենէ մարմնոյ եւ հոգւոյ (Բ. Կոր. Է. 1), եւ բնակեսցէ ի նոսա եւ շրջեսցի ի ձեռն Օծելոյ իւրոյ (Ղեւտ. ԻԶ. 11 — Բ. Կոր. Զ. 16). օրհնեսցէ զելս նոցա եւ զմուտս (Սղմ. ՃԻԱ. 8), եւ ուղղեսցէ զառաջիկայսն յոր ինչ օգուտն է։ Դեռ եւս մտադիւր[1] վասն նոցա կացցուք յաղօթս, զի հասեալք թողութեան յանցանաց սրբութեամբ, արժանի եղիցին սրբոց խորհրդոց եւ խառն ընդ սուրբսն կալցին։

Յոտն կացէք, երախայք։

Խնդրեցէք զԱստուծոյ զխաղաղութիւնն ի ձեռն Օծելոյ իւրոյ, խաղաղութեամբ զօրս եւ առանց մեղաց զամենայն ժամանակս կենաց ձերոց, քրիստոնէութեամբ զձեր վախճան, զհաշտն եւ զքաւիչ լինել Աստուծոյ, զթողութիւն յանցանաց, զանձինս ձեր միայնոյ անծնին Աստուծոյ Քրիստոսիւ նորա յանձն արասջիք։ Խոնարհեցարուք, եւ օրհնեսջիք։

*Դ. Առ իւրաքանչիւր բան ի բանիցս՝ զոր սարկաւագն քարոզէ, որպէս արդ ասացաք, ասասցէ ժողովուրդն՝ Տէր ողորմեա. եւ յառաջ քան զամենեսին մանկտին:*

*Իսկ իբրեւ խոնարհեցուցեալ իցէ զգլուխս, օրհնեսցէ զնոսա եպիսկոպոսն ձեռնադրեալ՝ օրհնութեամբս այսուիկ:*

Աստուած ամենակալ, անծին եւ անմատոյց, միայն ճշմարիտ Աստուած, Աստուած եւ Հայր Օծելոյ քո Միածնի Որդւոյ քո, Աստուած Մխիթարչին[2] եւ ամենեցունց Տէր, որ Քրիստոսիւ վարդապետս զաշակերտս կարգեցեր յուսումն աստուածպաշտութեան. ինքնին եւ այժմ նայեաց ի ծառայս քո՝ որ կան յուսման աւետարանի Քրիստոսի քո, եւ տուր նոցա սիրտ նոր, եւ հոգի ուղիղ նորոգեա ի փորի նոցա, գիտել եւ առնել զկամս քո լիով սրտիւ եւ յանձինս կամակաւս. արժանի արա՝ զնոսա ի սուրբ եկեղեցի քո, եւ հաղորդս արա աստուածեղէն խորհրդոց ի ձեռն Քրիստոսի յուսոյն մերոյ՝ որ ի վերայ նոցայն մեռաւ, որով քեզ փառք եւ պաշտօն ի Հոգի սուրբ յաւիտեանս. Ամէն:

*Ե. Եւ յետ այսորիկ ասասցէ սարկաւագն.* Երթայք, երախայք, խա-

[1] Ա. փիթրայի Վատիկ. օր. 2 ἔτι ἐκτενέστερον, համաձայն Ռուկեր.։

[2] Օրինակ Վիենն. առ փիթրայի՝ ὁ τοῦ Παρακλήτου προβολεύς.

*ղաղութեամբ։ Ու յելանելն նոցա արտաքս՝ ասասցէ․ Յաղօթս կացէք, նեղեալք յայսոց պղծոց։*

Մտադիւր ամենեքեան վասն նոցա աղաչեսցուք, զի մարդասէրն Աստուած սաստեսցէ Քրիստոսիւ այսոց պղծոց եւ չարաց, եւ զերծուսցէ զիւր աղաչաւորսն յօտարին բռնադատութենէ։ Որ սաստեացն լեգէոնի դիւացն (Մարկ. Ե. 9) եւ սկզբնաչարն սատանայի, ինքնին եւ այժմ սաստեսցէ ապստամբելոցն յաստուածպաշտութենէ, եւ փրկեսցէ զարարածս իւր ի նորա ազդեցութենէ, եւ սրբեսցէ զնոսա՝ զոր բազում իմաստութեամբն արար։ Եւ եւս մտադիւր վասն նոցա աղաչեսցուք. կեցո եւ յարո (կացո) զնոսա Աստուած, զօրութեամբ քով։

Խոնարհեցարուք, պսահորք, եւ օրհնեսջիք։

*Ու եպիսկոպոսն մատուցէ ի վերայ նոցա աղօթս. եւ ասասցէ.*

Որ զհզօրն կապեցեր եւ զամենայն զգործիս նորա յափշտակեցեր, (Մատթ. ԺԲ. 29.) որ տաս մեզ իշխանութիւն կոխել զօձս եւ զկարիճս (Ղուկ. Ժ. 19) եւ զամենայն զօրութիւն թշնամւոյն. որ զօձն մարդասպան ետուր մեզ ի ձեռս՝ կապեալ, իբրեւ ճնճղուկ ի ձեռս մանկանց. որոյ ամենայն ինչ դողայ եւ սարսէ յերեսաց զօրութեան նորա. որ կործանեցեր զնա իբրեւ զփայլակն յերկնից յերկիր՝ ոչ եթէ անկմամբ ինչ ի տեղւոջէ իմեքէ, այլ ի պատուոյ յանարգութիւն (Ղուկ. Ժ. 18). վասն նորա կամաւոր չարախորհուրդ մտացն որ նայեցած ցամաքեցուցանէ զանդունդս, եւ սպառնալեօք զլերինս, եւ ճշմարտութիւն մնայ յաւիտեան. զոր օրհնեն մանկունք եւ օրհնեն ստնդիացք. որում երգեն եւ երկիր պագանեն հրեշտակք. որ հայիս յերկիր՝ եւ տաս դողալ սմա. որ մերձենաս ի լերինս՝ եւ ծխեն. որ սաստես ծովու՝ եւ ցամաքեցուցանես զնա, եւ զամենայն զգետս նորա թափուր կացուցանես. որ ամպք փոշի ոտից են. որ շրջիս ի ծովու՝ իբրեւ ի վերայ յատակի. (Սղմ. ՃԳ. 9 — Եսայ. ՆԹ. 10 — Սղմ. ԿԵ. 5 — Եսայ. ԿԴ. 1 — Սղմ. ՃԺԵ. 2, Ը. 3, ԿԸ. 8, ՃԴ. 32 — Նաւում. Ա. 4, 3 — Յոբ. Թ. 8) Աստուած Միածին մեծի Հօր Որդի, սաստեա այսոց պղծոց, եւ փրկեա զգործս ձեռաց քոց յազդեցութենէ օդւոյն օտարի, զի քեզ փառք եւ պաշտօն եւ քեւ քում Հօրն ի Հոգւոյ սրբոյ, յաւիտեանս. ամէն։

*Գ. Ու սարկաւագն ասասցէ. Երթայք, պսահալք։ Ու յետ նոցա (ելանելոյ) քարոզեսցէ. Յաղօթս կացէք, լուսաւորեալք։*

Մտադիւր ամենայն հաւատացեալք վասն նոցա աղաչեսցուք, զի Տէր արժանի արասցէ զնոսա մաքրեալս ի մահ անդր Քրիստոսի՝ ընդ նմին յառնել (Հռոմ. Զ. 4, 5), եւ հաղորդս լինել արքայութեան նորա եւ խորհրդոց հաւասարել. միաւորեսցէ եւ խառնեսցէ (ժողովեսցէ) զնոսա ընդ փրկեալսն ի սուրբ եկեղեցւոջ իւրում։ Կեցո եւ յարո զնոսա քո շնորհօք։

*Ներեալ Աստուծոյ Քրիստոսի իւրով, խոնարհեալք օրհնեսցին յեպիսկոպոսէն օրհնութեամբս այսուիկ.*

Որ կանխաւ ի ձեռն մարգարէիցն քոյ ասացեր մաքրելոցն՝ Լուացարուք, սուրբ եղերուք (Եսայ. Ա. 16). եւ եդիր Քրիստոսիւ օրէնս վերստին ծննդեան, ինքնին եւ այժմ հայեաց ի մկրտեալս, եւ օրհնեա եւ սրբեա զսոսա, եւ կազմեալ յարդարեա՝ լինել արժանաւորս քում հոգեւորն պարգեւի եւ ճշմարիտ որդեգրութեան, քոյ հոգեւորն խորհրդոյ. եւ ժողովեսցին ընդ փրկեալսն Քրիստոսիւ Փրկչաւ մերով, որով քեզ փառք, պատիւ եւ պաշտօն ի Հոգի սուրբ, յաւիտեանս. ամէն:

*Ը. Եւ ասասցէ սարկաւագն.* Երթայք, լուսաւորեալք: *Եւ յետ այնորիկ քարոզեսցէ.* Յաղօթս կացէք՝ դուք յապաշխարութեանն էք:

Մտադիւր ամենեքեան վասն եղբարց՝ որ յապաշխարութեանն են, աղաչեսցուք. զի գթածն Աստուած ցուցցէ նոցա ճանապարհ ապաշխարութեան. ընկալցի զդարձ նոցա եւ զխոստովանութիւն, եւ խորտակեսցէ զսատանայ ընդ ոտիւք նոցա մերձ ընդ մերձ (Հռոմ. ԺԶ. 20), եւ զերծուսցէ զնոսա յորոգայթէ բանսարկուին եւ ի նենգութենէ դիւաց, եւ զերծուսցէ զնոսա յամենայն բանէ անիրաւութեան եւ ի բնաւ խեղաթիւր գործոց եւ ի չար խորհրդոց. եւ թողցէ նոցա զամենայն յանցուածս նոցա զկամայսն եւ զակամայսն, եւ ջնջեսցէ զձեռագիրն՝ որ կայր նոցա հակառակ (Կող. Բ. 13, 14), եւ գրեսցէ զնոսա ի դպրութեան կենաց. եւ սրբեսցէ զնոսա յամենայն պղծութենէ մարմնոյ եւ հոգւոյ (Բ. Կոր. Է. 1). եւ միացուսցէ զնոսա կարգելով միւսանգամ ի սուրբ հօտդ քո, զի դու գիտես զստեղծուածս նոցա: (Սղմ. ՃԲ, 14:) Զի ո՞ ոք պարծեսցի սիրտ սուրբ ունել կամ ո՞վ ոք համարձակեսցի պանծալ լինել սուրբ ի մեղաց (Առակ. Ի. 9). քանզի ամենեքեան ընդ սաստիւ եմք: Եւ եւս վասն նոցա մտադիւրագոյնս աղաչեսցուք, զի ուրախութիւն եղիցի յերկինս ի վերայ միոյ մեղաւորի՝ որ ապաշխարիցէ. (Ղուկ. ԺԵ. 7.) որպէս զի ի բաց կացեալ յամենայն անպատեհ գործոյ մերձաւոր լիցին ամենայն գործոց բարութեան, զի մարդասէրն Աստուած ընկալեալ արագ արագ հաշտութեամբ զպաղատանս նոցա՝ դարձուսցէ ի նոսա զցնծութիւն փրկութեան եւ հոգւով պետութեան հաստատեսցէ զնոսա (Սղմ. Ծ. 14), զի մի եւս սասանեսցին գնացք նոցա. (Սղմ. ԼԶ. 31.) այլ արժանի եղիցին լինել հաւասարորդս սրբութեանց նորա եւ հաղորդս աստուածեղէն խորհրդոց. զի որդեգրութեան արժանաւորք երեւեալք հասցեն կենացն յաւիտենից:

Եւ եւս մտադիւր ամենեքեան վասն նոցա ասասցուք՝ Տէր ողորմեա, կեցո զնոսա Աստուած, եւ յարո ողորմութեամբ քով:

Յարուցեալք Աստուծոյ Քրիստոսի իւրով, խոնարհեցարուք եւ օրհնեսջիք:

*Իսկ եպիսկոպոսն մատուսցէ ի վերայ նոցա աղօթս այսպէս:*

**Ամենակալ Աստուած յաւիտենական, ամենեցունց Տէր, արարիչ եւ վարիչ բոլորեցուն, որ զմարդ աշխարհ (զարդ*) աշխարհի ցուցեր Քրիստոսիւ, եւ օրէնս ետուր նմա բնածին եւ գրաւոր առ ի կեալ կեանս ըստ օրինի իբրեւ բանաւոր եւ մտաւոր: Եւ իբրեւ մեղաւ՝ ետուր նմա գրաւական յապաշխարութիւն զքո զթութիւնդ. Նայեաց ի սոսա՝ որ խոնարհեցուցին քեզ զպարանոցս հոգւոյ եւ մարմնոյ, զի ոչ եթէ կամիս ընդ մահ մեղաւորին՝ այլ ընդ ապաշխարութիւն, որպէս դառնալ նմա ի ճանապարհէ իւրմէ չարէ եւ կեալ (Եզեկ. ԼԳ. 11): Որ զՆինուէացւոցն ընկալար զապաշխարութիւնն. որ կամիս զի ամենայն մարդիկ կեցցեն եւ ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն (Ա. Տիմ. Բ. 4), որ ընկալար զորդին՝ որ եկեր զկեանս իւր անառակութեամբ, հայրենի աղեօք, վասն զղջանացն. դու եւ այժմ ընկալ զքոց աղաչաւորացդ զապաշխարութիւն, զի չէք ոք որ ոչ մեղիցէ քեզ (Գ. Թագ. Ը. 46). զի եթէ զանօրէնութիւնս քննեսցես, Տէր, Տէր, ո՞ կարիցէ կալ, զի ի քէն է քաւութիւն (Սղմ. ՃԼ. 3), եւ կացո զսոսա միւսանգամ ի սուրբ եկեղեցւոջ քում փառօք եւ պատուով Քրիստոսիւ Աստուծով փրկչաւ մերով, որով քեզ փառք եւ երկրպագութիւն ի Հոգին սուրբ, յաւիտեանս. ամէն:**

*Ը. Ու սարկաւագն ասասցէ. Արձակեցարուք՝ ոք յապաշխարութեան կայք: Ու յարեսցէ ի նոյն՝ Մի՛ ոք յառաջ մատիցէ յայնցանէ՝ որք ոչ են կարող:*

**Ծունր կրկնեսցուք հաւատացեալքս: ԶԱստուած աղաչեսցուք Քրիստոսիւ նորա: Միաբան ամենեքեան առ Աստուած պաղատեսցուք Քրիստոսիւ նորա:**

**Վասն խաղաղութեան եւ հաստատութեան աշխարհի եւ սրբոյ եկեղեցւոյ աղաչեսցուք, որպէս զի ամենեցունցն Աստուած զցանգորդ եւ զհաստատուն զիւր զխաղաղութիւն պարգեւեսցէ մեզ, զի զմեզ ի կատարման առաքինութեան՝ որ ըստ աստուածպաշտութեանն է, հանապազորդ պահեսցէ:**

**Վասն սրբոյ եւ կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյ՝ որ ի ծագաց մինչեւ ի ծագս երկրի է, աղաչեսցուք՝ որպէս զի անշարժ եւ առանց մրրկաց զսա պահեսցէ (եւ պահպանեսցէ) Տէրն մինչեւ ցկատարած յաւիտենից, հիմն եդեալ ի վերայ վիմի:[1]**

**Եւ վասն որ աստ սուրբ գաւառս է՝ աղաչեսցուք, որպէս զի արժանի արասցէ զմեզ ամենեցունցն Տէր հանապազորդ զնորին զերկնաւոր զյուսոյն զհետ ընթանալ, եւ անպակաս նմին զաղօթիցն զպարտս հատուցանել:**

---

* Յոյնը հոս բառախաղ մ՚ըրած է գրելով ὁ τὸν ἄνθρωπον κόσμου κόσμον ἀναδείξας, վասն զի κόσμος կը նշանակէ թէ զարդ, կարգ եւ թէ աշխարհ. (Համմտ. լատ. mundus.):

[1] Վատիկ. Or. 2. առ Փիթրայի. Ὑπὲρ τῆς τοῦ Θεοῦ ἐκκλησίας τῆς ἀπὸ περάτων τῆς οἰκουμένης.

Եւ վասն ամենայն իսկ եպիսկոպոսութեան՝ որ ընդ երկնիւք է, որք ուղիղն համառօտեն զբան ճշմարտութեան քո՝ աղաչեսցուք, եւ վասն եպիսկոպոսին մերոյ Յակովբայ եւ գաւառացն նորա՝ աղաչեսցուք. վասն եպիսկոպոսին մերոյ Եւոդեայ եւ գաւառայն՝ աղաչեսցուք, որպէս զի գթած Աստուած շնորհեսցէ զնոսա սրբոյ իւրոյ եկեղեցեաց ողջս, պատուականս ընդ երկայն աւուրս, եւ ծերութիւն պատուական պարգեւեսցէ նոցա աստուածպաշտութեամբ եւ արդարութեամբ:

Եւ վասն երիցանց մերոց աղաչեսցուք, որպէս զի փրկեսցէ զնոսա Տէր յամենայն անպատեհ եւ ի չար իրաց, եւ ողջ եւ պատուական նոցա զքահանայութիւնն շնորհեսցէ:

Վասն ամենայն ի Քրիստոս սարկաւագութեան եւ սպասաւորութեան աղաչեսցուք, որպէս զի առանց արատոյ զպաշտօն ծառայութեան նոցա Տէրն շնորհեսցէ (պարգեւեսցէ):

Վասն ընթերցողաց (ἀναγνώστης.), սաղմոսասացաց (սաղմոսողողաց ψαλμολόγος.), կուսանաց, այրեաց եւ որբոց աղաչեսցուք, վասն որք յամուսնութիւնս են եւ յորդեծնութիւնս՝ աղաչեսցուք, որպէս զի ամենեցուն նոցա ողորմեսցի Տէրն:

Վասն ներքինեաց՝ որք սրբութեամբ գնան, աղաչեսցուք:

Վասն որք ի ժուժկալութեան եւ ի բարեպաշտութեան՝ աղաչեսցուք:

Վասն որ պտղաբերեն ի սուրբ եկեղեցւոջ, եւ առնեն յաղքատս ողորմածութիւնս՝ աղաչեսցուք. եւ վասն որք պատարագս (զոհս) եւ նուիրս մատուցանեն Տեառն Աստուծոյ մերում, որպէս զի ամենաբարին Աստուած հատուսցէ ընդ այնր իւրովք երկնաւորն պարգեւօք, եւ տացէ նոցա յայժմուս զհարիւրապատիկն եւ ի հանդերձելումն զկեանսն յաւիտենականս, (Մատթ. ԺԹ. 29) եւ շնորհեսցէ նոցա փոխանակ երկրաւորացս զերկնաւորս:

Վասն նորոգ լուսաւորելոց եղբարց մերոց աղաչեսցուք, որպէս զի պնդեսցէ զնոսա Տէրն եւ հաստատեսցէ:

Վասն որք ի հիւանդութեան եղբարքն մեր աղաչեսցուք, որպէս զի փրկեսցէ զնոսա Տէր յամենայն ցաւոյ եւ յամենայն ախտէ եւ ողջանդամ կացուսցէ միւսանգամ ի սուրբ եկեղեցւոջ իւրում:

Վասն նաւորդաց եւ ճանապարհորդաց աղաչեսցուք:

Վասն որք ի մետաղս եւ յաքսորս եւ ի բանտս եւ ի կապանս են վասն անուան Տեառն՝ աղաչեսցուք:

Վասն որք ի դառն ծառայութեան տագնապին՝ աղաչեսցուք:

Վասն թշնամեաց եւ որք ատեանն զմեզ վասն անուանն Տեառն՝ աղաչեսցուք, որպէս զի ցածուցեալ զսրտմտութիւն նոցա Տեառն, ցրուեսցէ զբարկութիւնն որ ընդդէմ մեր է:

Վասն որք արտաքոյն են եւ մոլորեալք՝ աղաչեսցուք, որպէս զի դարձուսցէ զնոսա այսրէն Տէրն։

Զեկեղեցւոյ զմանկունս տղայս յիշեսցուք, որպէս զի կատարելով զնոսա Տեառն երկիւղիւն իւրով՝ հասուսցէ զնոսա ի չափ հասակի։

Վասն միմեանց աղաչեսցուք, որպէս զի պահեսցէ զմեզ Տէրն (եւ պահպանեսցէ) իւրով շնորհօք ի սպառ, եւ փրկեսցէ զմեզ ի չարէն եւ յամենայն գայթակղութեանց որոց (որք) գործեն զանօրէնութիւն եւ զերծուսցէ յարքայութիւն իւր յերկնաւոր։

Վասն ամենայն անձին քրիստոնէի աղաչեսցուք։ Փրկեա եւ յարո զմեզ Աստուած, ողորմութեամբ քով։

Յոտն կացցուք։

Մատուցեալ աղաչելով՝ զանձինս եւ զմիմեանս Աստուծոյ կենդանւոյ, Քրիստոսիւ նորա, յանձն արասցուք։

*Թ. Յայնր վերայ արասցէ աղօթս քահանայապետն, եւ ասասցէ.*

Տէր ամենակալ, բարձրեալ՝ որ ի բարձունս բնակեալ ես, սուրբդ՝ որ ի սուրբս հանգուցեալ ես, անսկիզբն, միահեծան՝ որ Քրիստոսիւ ետուր քարոզութիւն գիտութեան ճանաչել զփառս քո եւ զանուն քո, զոր յայտ արար մեզ՝ զի իմասցուք. դու եւ այժմ նայեաց նովաւ ի հօտս քո, եւ սրբեա զսա յամենայն ոգխտութենէ եւ ի չար գործոց, եւ տուր երկիւղիւ երկնչել եւ սիրով սիրել զքեզ եւ լուսաւոր լինել յերեսաց փառաց քոց. լեր նոցա հաշտ եւ քաւիչ եւ ունկնդիր աղօթից նոցա, եւ պահեա զնոսա անբիծ եւ անարատ եւ առանց բամբասանաց՝ զի իցեն սուրբք մարմնով եւ հոգւով՝ ոչ ինչ ունելով արատ կամ խորշ կամ այլ ինչ յայնպիսեաց, այլ զի իցեն կատարեալք եւ մի ոք ի նոսա խեղ եւ թերակատար։ Պաշտպան հզօր՝ որ ոչ առնուս ակն երեսաց, լեր ընդունելի ժողովրդեան քո այսորիկ՝ զոր գնեցեր պատուական արեամբ Քրիստոսի քո։ Վերակացու, խնամակալ, հզօրիչ, պահապան, պարիսպ ամրութեան, պատնէշ զգուշութեան. քանզի ի քումմէ ձեռանէ ոչ ոք զօրէ հանել. քանզի չէք Աստուած այլ՝ իբրեւ զքեզդ, զի ի քեզ է համբերութիւն մեր։ Սուրբ արա զնոսա ճշմարտութեամբ քով. զի քո բանդ ճշմարտութիւն է։ Անաչառուդ, անխաբդ, փրկեա զնոսա յամենայն ցաւոց եւ յամենայն հիւանդութենէ, ի բնաւ յանցանաց, ի բոլոր հնարից եւ ի պատրանաց, յերկիւղէ թշնամւոյն եւ ի նետէ որ թռչի ի տուէ, յիրէ որ շրջի ի խաւարի. եւ արժանի արա զնոսա յաւիտենիցն կենաց՝ որ Քրիստոսիւ Որդւով քով Միածնաւ Աստուծոյ եւ Փրկչաւ մերով, որով քեզ փառք եւ պաշտօն ի Հոգի սուրբ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

*Ժ. Ու յետ այսորիկ ասասցէ սարկաւագն.* Նայեսցուք զգուշութեամբ.[1]

---

[1] Փիթրա հոս կը ծանուցանէ թէ Վատիկ. | Օր. 2. կարմրագիր Հրահանգներ ունի. Նոյն-

(πρόσχωμεν.) *Ու ողջոյն տացէ եպիսկոպոսն, եւ ասասցէ.* **Խաղաղութիւն Աստուծոյ ընդ ամենեսին ընդ ձեզ։** *Ու տացէ պատասխանի ժողովուրդն.* **Եւ ընդ հոգւոյդ քում։** *Ու սարկաւագն ասասցէ ցամենեսեան.* **Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան։**

*Ու ողջոյն տացեն՝ ոյք յուխտէն են՝ եպիսկոպոսին, արք ժողովրդականք՝ արանց ժողովրդականաց, կանայք կանանց: Իսկ մանկունք կացցեն առ բեմին, եւ միւս եւս սարկաւագ՝ վերակացու կացցէ նոցա, զի մի անկարգս ինչ գործիցեն: Ու այլ եւս սարկաւագունք շրջեսցին եւ դէտ կացցեն արանց եւ կանանց, զի մի աղմուկ ինչ պատահեսցէ, եւ մի ոք ակնարկի առնիցէ կամ շշնջեսցէ կամ նիրհեսցէ: Սարկաւագունք յարանցն դրունս կացցեն, եւ կէս սարկաւագաց ի կանանցն դրունս, զի մի ոք ելցէ արտաքս եւ մի՛ բացցի դուռնն, թէպէտ ի հաւատացելոց ոք իցէ, ի պատարագին ժամու:*

*Իսկ մի ոմն ի կէս սարկաւագաց տացէ ջուր քահանայիցն լուանալ զձեռս, նշանակ հոգւոցն սրբութեան Աստուծոյ նուիրելոց:*

---

(Զ. ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՅԱԿՈՎԲՈՒ ԵՂԲՕՐ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԶԵԲԵԴԵԱՅ)

*ԺԱ. Ասեմ եւ ես Յակովբոս եղբայր Յովհաննու Զեբեդեայ, զի իսկ եւ իսկ ասասցէ սարկաւագն.*

**Մի ոք յերախայից, մի ոք յունկնդրաց, մի ոք յանհաւատից, մի ոք յայլափառաց։**

**Որք զառաջին զաղօթսն կատարեցէք, յառաջ մատերուք։ Զմանկտին առ ձեզ առէք, մարք։**

**Մի ոք հակառակ ուրուք, մի ոք կեղծաւորութեամբ։**

**Ուղղեալք**[1] **առ Տէր, ահիւ եւ դողութեամբ յոտն կացցուք մատուցանել (պատարագս**[2]**)։**

*Իբրեւ այս ամենայն կատարիցի, բերցեն սարկաւագունքն զընծայսն առ եպիսկոպոսն ի սեղան անդր, եւ երիցունք կացցեն յաջմէ նորա եւ յահեկէ իբրեւ աշակերտք՝ որ կայցեն առ վարդապետին:*

*Իսկ երկուք ի սարկաւագացն աստի եւ անտի սեղանոյն կալցին քշոց* ի պղնձի թիթղանց կամ ի փետրոց սիրամարգի կամ ի քողոյ, եւ հանդարտիկ քշեսցեն զմանր մանր անասնիկսն որ թռչիցին, զի մի ի բաժակսն անկանիցին:*

*ԺԲ. Այնուհետեւ աղօթս մատուցեալ քահանայապետին ի միասին ընդ քահանայսն, եւ զգեստ մեծապայծառ զանձամբ արկեալ, եւ կացեալ առ սեղանոյն, զնշան յաղթութեան խաչին ի ճակատուն ծեռամբն արարեալ (յամենեսին*[3]*), ասասցէ.*

---

պէս Վարդ. Օր. 1. ի լուսանցսն. այնպէս որ կրնայ ըսուիլ թէ եկեղեցւոյ մը մէջ ի գործածութեան եղած ըլլան ասոնք։

[1] «Ուղղեալք» ὀρθοί. կանգուն կեցէք:

[2] փիթրա, ἑστῶτες ὤμεν· προσφεριῶν γενομένων. Վարդ. Օր. 2. որն որ ընթերցել կ'երեւ-այ՝ ուղղեալ ասնկ, προσφορῶν.

* Յոյնը կ'ըսէ ῥιπίδιον (հողմահար, հովհարիչ) — flabellum, ինչպէս ունի նաեւ այստեղ Փիթրայի լատիներէնը: Այս տեղը ինքնին կրնար լուծել քշոցի նշանակութիւնն ու նախապէս ինչ ըլլալուն վրայ վերջերս յուզուած խնդիրը: ՀՐՏՐ.

[3] «Յամենեսին» — εἰς πάντας, (զոր չունին

Շնորհք ամենակալին Աստուծոյ եւ սէրն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ամենեսին ընդ ձեզ:

Եւ ամենքին ասասցեն միաբան բարբառով թէ Եւ ընդ հոգւոյդ քում:
Եւ քահանայապետն՝ Ի վեր զմիտս: Եւ ամենքին՝ Ունիմք առ Տէր:
Եւ քահանայապետն՝ Գոհասցուք զՏեառնէ: Եւ ամենքին՝ Արժան եւ իրաւ:

Եւ քահանայապետն ասասցէ:

Արժան է ճշմարիտ եւ իրաւ յառաջ քան զամենայն զքեզ օրհնել՝ որ արդարեւ Աստուածդ ես, յորմէ ամենայն նահապետութիւն յերկինս եւ յերկրի անուանի. (Եփես. Գ. 15.) զմիայն անծինդ եւ զանսկիզբն եւ զանթագաւոր եւ զանտէրդ, զանկարօտդ եւ զամենայն բարութեան տուիչ եւ քան զամենայն ծնունդ աղնուագոյն, որ հանապազ ի նոյնս եւ նոյնպէս կաս, յորմէ ամենայն՝ իբրեւ ի գանձարանէ իմեքէ՝ ի լինել եւ ի գոյանալ եկն. քանզի դու ես գիտութիւն անսկիզբն, տեսութիւն մշտնջենաւոր, լսողութիւն անծին, իմաստութիւն ոչ ուսեալ. առաջին՝ բնութեամբ, եւ օրէնք լինելութեան, քան զամենայն թիւ եւ համար լաւագոյն: Զամենայն ինչ առ ի չգոյէ ի գոյութիւն ածեալ Միածնաւ Որդւովդ քով, այլ զսա յառաջ քան զամենայն յաւիտեանս ծնար կամօք եւ զօրութեամբ եւ բարերարութեամբ, առանց միջնորդի, Որդի Միածին, Բան Աստուած, իմաստութիւն կենդանի, անդրանիկ ամենայն արարածոց, (Կող. Ա. 15.) հրեշտակ մեծի խորհրդոյ քոյ, (Եսայ. Թ. 6.) զքո քահանայապետն[1] եւ զթագաւոր եւ զՏէր ամենայն մտաւոր եւ զգալի բնութեան, որ յառաջն է քան զամենայն. նովաւ զամենայն արարեր եւ նովաւ զնոյն պատշաճ տեսչութեանն արժանի առնես, զի որով զլինելն շնորհեցեր՝ նովին եւ զբարւոքն լինել պարգեւեցեր: Աստուած եւ Հայր Միածնի Որդւոյ քոյ, որ նովաւ յառաջ քան զամենայն արարեր զՔերովբէսն եւ զՍերովբէսն, զՅաւիտեանսն եւ զԱթոռս, զՀրեշտակապետս եւ զՀրեշտակս, եւ յետ ամենեցուն նոցա՝ արարեր նովաւ զայս աշխարհ երեւելի, եւ զամենայն որ ի սմա. զի դու ես՝ որ զերկինս կանգնեցեր իբրեւ զկամար եւ իբրեւ զխորան ձգեցեր, եւ զերկիր ի վերայ ոչընչի հաստատեցեր կամօք լոկով. (Գ. Եզր. Ժ.Զ. 60 — Աղմ. ՃԳ. 2.) որ յօրինեցեր զհաստատութիւն, եւ զգիշեր եւ զտիւ կազմեցեր, հաներ լոյս ի գանձուց, եւ նորին մեկնելով ածեր վերստին զխաւար ի հանգիստ գազանաց՝ որ յաշխարհի գնան. որ եդիր զարեգակն յիշխանութիւն տուընջեան յերկինս եւ զլուսին յիշխանութիւն գիշերոյ, եւ զպարս աստեղաց յերկինս ծրագրեցեր ի գովեստ մեծվայելչութեան քոյ. որ արարեր ջուր յըմպումն եւ ի մաքրումն, օդ կենդանական

---

Վատիկ. Օր. 2 եւ Օր. Վիեննայի.) ըստ այլոց Օրինակաց՝ այսպէս Վատիկ. Օր. 1:

[1] Փիթրա՝ 'Αρχιερέα σὸν καὶ προσκυνητὴν ἀξιόχρεων, βασιλέα Vatic 2. quae quidem varietas adeo singularis est, ut arianam hic latere interpolationem facile concederem.

*առ ի շունչ եւ ի տալ ձայն բարբառոյ՝ լեզուաւ զօդն բախելով, եւ զի լսելիք յօդոյն նպաստ գտեալ՝ ընդունիցին զբանն ի նա անկեալ. որ արարեր հուր ի մխիթարութիւն խաւարի, ի լրումն պիտոյից եւ ի մեր ջեռնուլ եւ լուսաւորել ի նմանէ. զծովն մեծ զատուցեր ի ցամաքէ, եւ զմին ցուցեր ի նաւարկութիւն եւ զմեւսն արարեր ի գնացս ոտից, զմին անասնովք մանումբք եւ մեծամեծօք լցեր, իսկ զմեւսն զգօն եւ ամեհի գազանօք լցուցեր, եւ ազգիազգի տնկովք ծածկեցեր եւ բուսովք պսակեցեր, եւ ծաղկօք գեղեցիկ գործեցեր եւ սերմամբք ետուր մեծութիւն: Որ զանդունդս հաստատեցեր եւ թումբ զնովաւ եդիր, աղտաղտին ջրոյ բազմութեամբ լցեալ՝ եւ պատեցեր զնա շուրջանակի դրամբք թեթեւ աւազոյ. որ մերթ բարձրացուցանես զնա հողմովք լեռնաբերձ, եւ մերթ յատակեալ դաշտացուցանես, եւ երբեմն ուռուցանես մրրկօք, եւ երբեմն ցածուցանես հանդարտութեամբ, զի նաւագնացից դիւր լիցի գնալ (զի դիւր լիցի նաւուց գնալոյ): Որ գետովք պատեցեր զաշխարհ ի քէն եղեալ Քրիստոսիւ, ողողեցեր հեղեղատօք, եւ մշտաբուխ աղբերօք արբեցուցեր, լերամբք սեղմեալ պնդեցեր յանշարժ եւ յանխախուտ հողոյն զանգուածն: Զի զքո զաշխարհդ լցեր. եւ զարդարեցեր զսա անուշահոտ եւ բժշկիչ բուսովք, բազում եւ պէսպէս անասնովք, յորոց կէսք ուժեղք են կամ տկարք, եւ կէսք ուտին եւ ի գործ են, եւ կէսք ընդելականք են եւ կէսք վայրիք, սողնոց շշմամբ, զունակ զունակ թռչնոց կանչիւք, ամաց բոլորիւք, ամսոց եւ աւուրց համարովք, ժամանակաց կարգաւ, անձրեւաբեր ամպոց գնացիւք ի ծնունդս պտղոց եւ ի սնունդ անասնոց, դադարումն հողմոց՝ որ շնչեն յորժամ ի քէն առնուն հրաման, զտնկոց եւ զբուսոց բազմութիւն: Եւ ոչ միայն զաշխարհ արարեր, այլ եւ զաշխարհաքաղաքացին զմարդն ի նմա աշխարհ աշխարհի (աշխարհի զարդ, κόσμου κόσμον) զնա ցուցեալ: Քանզի ասացեր քում իմաստութեանդ. Արասցուք մարդ ըստ պատկերի մերում եւ ըստ նմանութեան, եւ իշխեսցէ ձկանց ծովու եւ թռչնոց երկնից: Արդ արարեր զնա յանմահ հոգւոյ եւ յանցաւոր մարմնոյ, զմին ի չգոյէ եւ զմեւսն ի չորից տարերաց. եւ ետուր նմա ըստ հոգւոյն զբանաւորն խելամտութիւն, զբարեպաշտութեան եւ զամպարշտութեան զընտրութիւն, զիրաւի եւ զանիրաւի զնկատութիւն. իսկ ըստ մարմնոյն զհնգապատիկ զգայութեան շնորհեցեր եւ զգայունս խաղացս: Քանզի դու, Աստուած ամենակալ, Քրիստոսիւ զդրախտն յԵդեմ ընդ արեւելս տնկեցեր ամենազգի տնկոց ուտելեաց զարդու, եւ անդր իբրեւ ի տուն բազմամթերս մուծեր զնա. եւ ետուր ընդաբոյս օրէնս առ ի գործել, որպէս զի ի բնէ եւ յանձնէ ունիցի զաստուածպաշտութեանն զսերմանիսն: Իսկ իբրեւ մուծերն ի դրախտ անդր փափկութեան, ետուր նմա իշխանութիւն յամենայնէ ճաշակել, զմիոյն եւեթ զճաշակումն արգելեր յուսադունացն յուսով, զի յորժամ զպատուիրանն պահիցէ, ապա վարձս ընդ այնր զանմահութիւնն ընկալցի: Այլ իբրեւ անփոյթ արար*

*զհրամանն, եւ եկեր ի պտղոյն յորմէ հրաժարեցուցեր՝ խաբէութեամբ օձին եւ խորհրդով կնոջն, յիրաւի մերժեալ գնա ի դրախտէն. սակայն բարերարութեամբ չարարեր ի սպառ անտես զկորուսեալն, քանզի քո իսկ արարած էր. այլ հնազանդեալ նմին զարարածս՝ ետուր նմա իւրովք քրտամբք եւ վաստակօք հնարել զտանել իւր կերակուր, քո զբնաւ բուսուցանելով եւ աճեցուցանելով եւ հաստուցանելով: Յետ այնորիկ առ սակաւ մի ի քուն արարեալ զնա՝ երկմամբ կոչեցեր վերստին ծնանել, զմահուն սահման լուծեալ՝ կեանս ի յարութենէ խոստացար: Եւ ոչ այսչափ միայն, այլ զաւակ ի նմանէ անհամար բազմութեամբ սփռեցեր, եւ որ ընդ քեզն հաճեցին՝ փառաւորեցեր, եւ ոյք յետս կացին ի քէն՝ ածեր ի վերայ նոցա պատիժս. եւ զԱբէլին իբրեւ զսրբոյ ընկալեալ զզոհսն, իսկ զեղբայրասպանն Կայենի մերժեցեր զպատարագն իբրեւ զարշանս: Պարձեալ զՍեթ եւ զԵնովս ընկալար, եւ զԵնովք փոխեցեր: Զի դու ես մարդկան սրբիչ եւ կենաց պարգեւատու, կարօտութեան լցուցիչ եւ օրինաց տուիչ, եւ որոց պահենն զնոսին՝ վարձահատոյց, եւ որոց զանցանեն՝ վրէժխնդիր. որ զմեծ ջրհեղեղն ածեր ի վերայ աշխարհի վասն բազմամեղ ամպարշտացն, եւ զարդարն Նոյ ազատեցեր ի ջրհեղեղէ տապանաւ՝ ութ ոգւովք, լինել վախճան կատարածի կորուսելոցն՝ եւ սկիզբն հանդերձելոցն. որ հուր ահագին ի վերայ Սոդոմական հինգ քաղաքացն վառեցեր, եւ զերկիրն պտղաբեր եղիր յաղտաղտինս առ չարութեան բնակչաց նոցա, եւ զսուրբն զՂովտ յափշտակեցեր ի միջոյ հրոյն: Դու ես՝ որ զԱբրահամ ապրեցուցեր ի նախնեացն ամպարշտութենէ, եւ աշխարհի ժառանգ կացուցեր, եւ ցուցեր նմա զքո Քրիստոսն. որ զՄելքիսեդեկ՝ քահանայապետ պաշտաման քո ընտրեցեր. որ զբազմամարտիկ զծառայն քո զՅոբ ի վերայ սկզբնաչար օձին յաղթող ցուցեր. որ զՍահակ արարեր որդի աւետեաց. որ զՅակոբ հայր երկոտասան ուստերաց եւ զզաւակ նորա արարեր ի բազմութիւն, եւ ածեր մուծեր յԵգիպտոս ոգիս եւթանասուն եւ հինգ: Դու, Տէր, զՅովսէփ չարարեր անտես, այլ վարձս ընդ զգաստութեանն վասն քո՝ ետուր իշխել Եգիպտացւոցն: Դու, Տէր, զԵբրայեցիսն չարչարեալս յԵգիպտացւոցն՝ վասն առ հարսն աւետեաց ոչ անտես արարեր, այլ փրկեցեր զնոսա՝ տանջելով զԵգիպտացիսն: Իբրեւ ապականեցին մարդիկ զօրէնս զբնածինս, եւ զարարածս մերթ ինքնակացս համարեցան եւ մերթ առաւել քան զարժանն ի պատիւ առին եւ քեզ ամենեցունցն Աստուծոյ հաւասարեցուցին, ոչ թողեր մոլորել, այլ ածեր ի մէջ զսուրբ պաշտօնեայն քո զՄովսէս. նովաւ առ ի յօգնականութիւն բնածին օրինացն զգրովն օրէնսն ետուր, եւ զարարածս արարեալ ցուցեր թէ քո գործ է. մերժեցեր վտարեցեր զբազմաստուածութեան մոլորութիւնն: ԶԱհարոն եւ զնորին զարմ եւ զաւակ քահանայական պատուով փառաւորեցեր. զԵբրայեցիսն որ մեղան՝ պատժեցեր. իբրեւ դարձան՝ ընկալար: ԶԵգիպտացիսն սաստահարուածեան պատուհասիւ խոշտան-*

գեցեր. զծով բաժանեալ՝ անցուցեր զԻսրայէլացիսն. որ զհետն մտեալ էին նոցա զԵգիպտացիսն ընկղմեալս սատակեցեր. փայտիւ զդառն ջուրսն ի քաղցրութիւն փոխեցեր. յապառաժ վիմէ ջուր բխեցեր. տեղացեր մանանայ յերկնից կերակուր, յօդոց զլորամարգին. սիւն հրոյ ի գիշերի առ ի լուսաւորութիւն, եւ սիւն ամպոյ ի տուէ առ ի շուք հովոյ. զՅեսու ցուցեր զօրավար, զեւթն ազգս Քանանացւոցն նովաւ ջնջեցեր. զՅորդանան բաժանեցեր, զգետսն Եթամայ ցամաքեցուցեր. պարիսպս առանց մեքենայից եւ ձեռին մարդոյ կործանեցեր։ Վասն այսր ամենայնի փառք քեզ, Տէր ամենակալ։ Քեզ երկիր պագանեն անհամար զօրք հրեշտակաց,[1] հրեշտակապետաց, աթոռոց, տէրութեանց, պետութեանց, իշխանութեանց, զօրութեանց, զօրաց, յաւիտեանց (յաւիտենականաց), Քերովբէք եւ վեցթեւեան Սերովբէք՝ որք երկու թեւովքն ծածկեն զոտս եւ երկու թեւովքն զգլուխս եւ երկու թեւովքն թռչին, (Ես. Զ. 2.) եւ ասեն հանդերձ հազարօք հազարաց հրեշտակապետաց եւ բիւրուք բիւրուց հրեշտակաց (Դան. Է. 10.) որք անհանգիստ եւ առանց լռելոյ գոչեն.

*Եւ ամենայն ժողովուրդն միանգամայն ասասցէ.*

Սուրբ, սուրբ, սուրբ Տէր Սաբաւովթ. լի են երկինք եւ երկիր փառօք նորա. օրհնեալ յաւիտեանս. ամէն։

*Եւ քահանայապետն ասասցէ զայնր զկնի:*

Զի սուրբ ես ճշմարտապէս եւ ամենասուրբ, բարձրեալ եւ առաւել բարձրացեալ յաւիտեանս. սուրբ է Միածին քո Որդի Տէր մեր եւ Աստուած Յիսուս Քրիստոս՝ որ առ ամենայն ինչ սպասաւոր եղեւ քեզ Աստուծոյ իւրում եւ Հօր յազգիազգի ի գործ արարչութեան եւ ի պէսպէսն տեսչութիւն, ոչ արար անտես զազգ մարդկան զկորուսեալ, այլ յետ բնականն օրինաց, յետ օրինականն թելադրութեան, յետ մարգարէական յանդիմանութեանց եւ հրեշտակացն վերակացութեանց, իբրեւ ապականեցին հանդերձ եղելովք օրինօք եւ զբնածինն, եւ մերժեցին յուշոյ յիշատակաց ի բաց զՋրհեղեղն, զհրայրեացն եւ զԵգիպտացւոց զհարուածսն, զկոտորած Պաղեստինացւոցն, եւ ամենքին այնուհետեւ կորնչելոց էին, հաճոյ թուեցաւ նմա, քո կամօք, մարդոյն արարչի լինել մարդ, օրէնսդրին՝ ընդ օրինօք, քահանայապետին լինել պատարագ, հովուին՝ ոչխար. եւ ած մեզ ի հաճութիւն զիւր զԱստուած եւ զՀայր եւ հաշտեցոյց ընդ աշխարհի, եւ ապրեցոյց զամենեսին ի բարկութենէ ի վերայ հասելոյ, եղեալ ի կնոջէ, եղեալ ի մարմնի Աստուածն Բան, Որդին սիրելի, անդրանիկ ամենայն արարածոց, ըստ մարգարէութեանցն՝ որ վասն նորա ի

[1] Հոս ծանօթ. Կարգ. փիթրայի. — Secunda manu, quasi erasa alia scriptura, additur, Σὲ προσκυνεῖ ὁ παράκλητος, et pergit insolentissima varietas: πρὸ δὲ πάντων ὁ ἅγιός σου παῖς Ἰησοῦς ὁ Χριστὸς ὁ κύριος καὶ Θεὸς ἡμῶν, σοῦ δὲ ἄγγελος καὶ τῆς δυνάμεως ἀρχιστράτηγος, եւ այլն.

նմանէ կանխաւ ասացան, ի զաւակէ Դաւթի և Աբրահամու և ի տոհմէն Յուդայ, և եղև յարգանդի մօր կուսի այն՝ որ ստեղծն զամենայն ծնունդ, և մարմնացաւ անմարմինն, ծնեալն անժամանակ՝ ծնաւ ի ժամանակի, քաղաքավարեալ սրբութեամբ և ուսոյց խրատեաց օրինօք, զամենայն ցաւս և զամենայն հիւանդութիւն ի մարդկանէ փարատեցուցեալ և նշանս և արուեստս ի ժողովրդեան կատարեալ, կերակրեալ և ըմպելեալ և քնոյ հաւասարեալ որ կերակրէն զամենեսին՝ որոց կերակուր պիտոյ է, և լնու զամենայն կենդանի՝ հաճութեամբ. յայտնեաց զանուն քո որոց չէինն գիտակ, մերժեաց զոգխտութիւն, զաստուածպաշտութիւն արծարծեաց, զկամս քո ելից, զգործ՝ զոր ետուր նմա, կատարեաց. և իբրև զայս ամենայն ուղղեաց կատարեաց, ըմբռնեալ ի ձեռաց անօրինաց, սուտանուն քահանայից և քահանայապետաց, մատնեալ յայնմանէ՝ որ չարութեամբն ախտամայր, և բազում ինչ չարչարեալ ի նոցանէ, և կրեալ զամենայն անարգութիւն, ներելով. մատնեալ Պիղատոսի դատաւորի, և դատեալ՝ որ դատաւորն է, և դատապարտեալ՝ որ փրկիչն է, ի խաչ բևեռեցաւ անկրականն և մեռաւ անմահն ի բնէ, և թաղեցաւ կենդանարարն, զի զկիրս չարչարանաց լուծցէ և ի մահուանէ զերծուսցէ զայնոսիկ՝ վասն որոց եկն, և փակեսցէ զկապանս սատանայի և փրկեսցէ զմարդիկ ի խաբէութենէ նորա. և յարեաւ ի մեռելոց յաւուր երրորդի, և զաւուրս քառասուն շրջեալ ընդ աշակերտսն, ամբարձաւ յերկինս և նստաւ ընդ աջմէ քո Աստուծոյ և Հօր իւրոյ։

ԺԴ. Յիշելով այսուհետև որ ինչ միանգամ վասն մեր համբեր, գոհանամք զքէն, Աստուած ամենակալ, ոչ եթէ որչափ ինչ պարտիմք՝ այլ որչափ ինչ կարող եմք, և զնորին պատուէր կատարեմք. քանզի ի գիշերին՝ յորում մատնէր, առեալ հաց՝ սուրբ և անարատ ձեռօք իւրովք, և հայեցեալ ի վեր առ քեզ Աստուած իւր և Հայր, և բեկեալ՝ ետ աշակերտացն, և ասէ. Այս է խորհուրդ նորոյ ուխտի (Նորոց կտակարանաց). առէք ի սմանէ կերայք. Այս է մարմին իմ, որ վասն բազմաց բաշխի ի թողութիւն մեղաց։ Նոյնպէս և զբաժակն խառնեալ ի գինւոյ և ի ջրոյ, և արբեալ՝ ետ ի նոսա և ասէ. Արբէք ի դմանէ ամենեքեան. Այս է արիւն իմ, որ վասն բազմաց հեղեալ ի թողութիւն մեղաց։ Զայդ արարէք առ իմոյ յիշատակի. զի քանիցս անգամ թէ ուտիցէք զհացս զայս և ըմպիցէք զբաժակս զայս, զմահ իմ պատմեցէք, մինչև եկից։

Յիշելով այսուհետև զչարչարանս նորա և զմահ և զյարութիւն ի մեռելոց և զմիւսանգամ յերկինս զելարձն և զհանդերձեալ զերկրորդ գալուստ նորա՝ յորժամ գայ փառօք և զօրութեամբ դատել զկենդանիս և զմեռեալս և հատուցանել իւրաքանչիւր զգործս իւր, մատուցանեմք քեզ Թագաւորիդ և Աստուծոյ, ըստ նորա հրամանին, զհացս զայս և զբաժակս,

գոհանալով զքէն նմա, զի արժանաւորս արարեր զմեզ կալ առաջի քո. եւ աղերսեմք զքեզ, որպէս զի հայեսցիս հաշտ աչօք յընծայս յայսոսիկ՝ որ եդեալ են առաջի քո, դու անկարօտ[1] Աստուած. եւ հաճեսցիս ընդ սոսա ի պատիւ Քրիստոսի քոյ, եւ առաքեսցես զՀոգի քո սուրբ ի պատարագս[2] յայս, զքո զվկայ չարչարանաց Տեառն Յիսուսի, որպէս զի ցուցցէ զհացս մարմին Քրիստոսի քոյ եւ զբաժակս արիւն Քրիստոսի քոյ, զի որք ճաշակեսցեն ի սմանէ՝ հաստատեսցին յաստուածպաշտութիւն, գտցեն մեղաց թողութիւն, ապրեսցին ի սատանայէ եւ ի մոլորութենէ նորա, լցցին Հոգւով սրբով, եղիցին արժանի Քրիստոսի քոյ, հասցեն կենացն յաւիտենից, քո ընդ նոսա հաղորդելով,* Տէր ամենակալ։

ԺԸ. Եւ եւս աղաչեմք զքեզ, Տէր, եւ վասն սրբոյ քոյ եկեղեցւոյ՝ որ ի ծագաց մինչեւ ի ծագս է, զոր ստացար պատուական արեամբ Քրիստոսի քո, որպէս զի պահեսցես զսա անշարժ եւ առանց ալեկոծութեան մինչեւ ի կատարած յաւիտենիս։ Եւ վասն ամենայն եպիսկոպոսութեան՝ որ ուղիղ հատուածեն զբանն ճշմարտութեան։

Եւս աղերսեմք զքեզ եւ վասն իմոյ չքութեան[3] որ մատուցանեմս, եւ վասն ամենայն քահանայութեան, վասն սարկաւագաց եւ ամենայն ուխտիս, զի զամենեսին իմաստնացուցեալ լցցես Հոգւով սրբով։

Եւս աղաչեմք զքեզ, Տէր, վասն թագաւորին եւ իշխանաց[4] (Ա. Տիմ. Բ. 2) եւ ամենայն զօրուն, զի խաղաղութեամբ կացցեն իրք մեր, որպէս զի հանդարտութեամբ եւ միաբանութեամբ կեցեալք զամենայն ժամանակս կենաց մերոց, փառաւոր արասցուք զքեզ Յիսուսիւ Քրիստոսիւ յուսով մերով։

Եւս մատուցանեմք քեզ եւ վասն ամենայն սրբոց՝ որ ի յաւիտենից հաճոյ եղեն քեզ, նահապետաց, մարգարէից, արդարոց, առաքելոց, մարտիրոսաց, խոստովանողաց, եպիսկոպոսաց, երիցանց, սարկաւագաց, անագնոստաց, սաղմոսողգաց, կուսանաց, այրեաց, ժողովրդականաց եւ ամենեցուն՝ զորոց դու ինքնին գիտես զանուանսն։

Եւս մատուցանեմք քեզ եւ վասն ժողովրդեանս այսորիկ, զի ցուցցես զսա ի գովեստ Քրիստոսի քոյ՝ թագաւորութեան քահանայութիւն, ազգ սուրբ. (Ա. Պետր. Բ. 9.) վասն որ ի կուսութեան եւ ի ժուժկալութեան են, վասն այրեաց եկեղեցւոյ, վասն որք ի պարկեշտ հարսանիս իցեն եւ յորդեծնութիւնս, վասն մանկանց ժողովրդեան քոյ, որպէս զի մի զոք ի մէնջ ընդ՛ խոտանս համարիցիս։

---

1 Անկարօտ։

2 Ի զոհս։

Յոյն բնագիրը կ'ըսէ. σοῦ καταλλαγέντος αὐτοῖς, այսինքն՝ քո ընդ նոսա հաշտելով. ինչպէս ունի նաեւ Փիթրայի լատիներէնը՝ te illis reconciliato. ՀՐՏՐ.

3 Այլ Օրին. «տկարութեան»

4 Որոց յիշխանութեան են։

Եւս աղերսեմք զքեզ եւ վասն քաղաքիս եւ որ ի սմին բնակեալ են. վասն որք ի հիւանդութիւնս լինին. վասն որ ի դառն ծառայութեան. վասն որք ի վտարանդիս[1] են. վասն որոց ինչք զրկեալ են. վասն նաւելոց եւ ճանապարհորդաց, որպէս զի եղիցես ամենեցուն պաշտպան, օգնական եւ ընդունելի:

Եւս աղաչեմք զքեզ եւ վասն որ ատեանն զմեզ եւ հալածեն զմեզ վասն անուան քո. վասն ոյք արտաքոյն են եւ մոլորեալք, զի դարձուսցես զնոսա ի լաւ անդր, եւ զսրտմտութիւն նոցա ցածուսցես:

Եւս աղաչեմք զքեզ եւ վասն երախայից եկեղեցւոյ, եւ վասն ալեկոծելոց[2] յոտարէն, եւ ոյք յապաշխարութեան կան եղբարքն մեր, որպէս զի զնոսա կատարեսցես ի հաւատս եւ զնոսա սրբեսցես յազդեցութենէ չարին եւ զայլոցն զապաշխարութիւն ընկալցիս եւ թողցես եւ նոցա եւ մեզ զյանցուածս մեր:

Եւս աղօթս առնեմք ու եւ վասն քաղցրախառնութեան օդոց եւ պտղաբերութեան[3] պտղոց, որպէս զի առանց նուազութեան վայելեալք ի բարութիւնսն որ ի քէն են, օրհնեսցուք զքեզ անդադար[4] հանապազ, որ տաս կերակուր ամենայն մարմնոյ:

Եւս աղաչեմք զքեզ եւ վասն որք իրաւացիկ պատճառանօք հեռի են, որպէս զի զամենեսին զմեզ պահեսցես յաստուածպաշտութեան. ժողովեսցես յարքայութեան Քրիստոսի քո, Աստուծոյ ամենայն զգալի եւ մտաւոր բնութեան, Թագաւորին մերոյ, անրիծս անարատս եւ անբամբասս. զի քեզ ամենայն փառք,[5] պաշտօն եւ գոհացողութիւն, պատիւ եւ երկրպագութիւն, Հօր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն եւ այժմ եւ միշտ եւ յանսպառ եւ յանվախճան յաւիտեանս յաւիտենից:

*Եւ ամենայն ժողովուրդն ասացէ.* Ամէն:

*ԺԶ. Եւ եպիսկոպոսն ասացէ.* Խաղաղութիւն Աստուծոյ եղիցի ընդ ամենեսին ընդ ձեզ:

*Եւ ամենայն ժողովուրդն ասացէ.* Եւ ընդ հոգւոյդ քում:

*Եւ սարկաւագն ասացէ միւսանգամ քարոզելով:*

Եւ եւս աղաչեսցուք զԱստուած Քրիստոսիւ նորա վասն ընծայիս մատուցելոյ Տեառն Աստուծոյ, որպէս զի բարերարն Աստուած ընկալցի զսա միջնորդութեամբ Քրիստոսի իւրոյ յիւր յերկնաւոր սեղանն ի հոտ անուշից:

Վասն եկեղեցւոյս այսորիկ եւ ժողովրդեանս աղաչեսցուք, վասն ամենայն եպիսկոպոսութեան, համօրէն քահանայութեան, բոլոր ի Քրիստոս սար-

---

[1] Ցաքսոր:

[2] Հարուածելոց:

[3] Քաղաբերութեան:

[4] Անհանգիստ:

[5] Փիթրա՛ ἡ δόξα σοι καὶ εὐχαριστία, καὶ διὰ σὲ καὶ μετὰ σὲ αὐτοῦ τιμή, προσκύνησις, ἐν ἁγίῳ πνεύματι. Վատիկ. Օր. 2:

*կուսութեան եւ սրբասիրութեան, ամենայն իսկ լըման եկեղեցւոյ աղաչեսցուք, որպէս զի զամենեսեան պահեսցէ եւ պահպան լեցի նոցա Տէրն։*

*Վասն Թագաւորաց աղաչեսցուք, զի խաղաղութեամբ կացցեն մեր իրք, որպէս զի զհանգստեան եւ զհանդարտութեան կեանս կեցցուք ամենայն աստուածպաշտութեամբ եւ պարկեշտութեամբ։*

*Զսուրբ մարտիրոսն յիշեսցուք, որպէս զի նոցին նահատակութեան հաղորդել արժանի եղիցուք։*

*Վասն որք հաւատովն հանգեան։*

*Վասն քաղցրախառն օդոց եւ հասանելոյ պտղոց աղաչեսցուք։*

*Վասն լուսաւորելոցն աղաչեսցուք, որպէս զի եղիցին հաստատունք ի հաւատս։*

*Ամենեքեան ի միմեանց վերայ յաղօթս կացցուք։*

*Յարո զմեզ, Աստուած, շնորհօք քո։*

*Յարուցեալք Աստուծոյ զանձինս Քրիստոսի. նորա յանձն արասցուք։*

*ԺԷ. Եւ եպիսկոպոսն ասասցէ:*

*Աստուած մեծ եւ մեծանուն, մեծ խորհրդով եւ հզօր գործովք,* (Երեմ. ԼԲ. 19.) *Աստուած եւ Հայր սրբոյ Որդւոյ քո Յիսուսի փրկչին մերոյ, նայեաց ի մեզ եւ ի հօտս քո՝ զոր նովաւ ընտրեցեր ի փառս անուան քոյ, եւ սրբեալ զմեր մարմինս եւ զհոգիս՝ արժանաւորս արա մաքրեալս յամենայն պղծութենէ մարմնոյ եւ հոգւոյ* (Բ. Կոր. Է. 1) *յառաջիկայ բարութիւնսդ վայելել. եւ մի զոք անարժան համարիցիս, այլ լեր մեր օգնական, պաշտպան եւ հովանի Քրիստոսիւ քով, ընդ որում քեզ փառք, պատիւ, օրհնութիւն, փառաբանութիւն, գոհացողութիւն եւ սրբոյ Հոգւոյդ յաւիտեանս. Ամէն։*

*ԺԸ. Եւ յետ ամենեցուն ասելոյ Ամէն՝ ասասցէ սարկաւագն.*

*Նայեսցուք զգուշութեամբ.* (*պռոսխումէն.* πρόσχωμεν).

*Եւ եպիսկոպոսն բարբառեսցի առ ժողովուրդն այսպէս:*

*Սրբութիւնք սրբոց։*

*Եւ պատասխանի տացէ ժողովուրդն:*

*Միայն սուրբ, միայն Տէր, միայն Յիսուս Քրիստոս,*[1] *ի փառս Աստուծոյ Հօր, օրհնեալ յաւիտեանս. ամէն։*

*Փառք ի բարձունս Աստուծոյ եւ յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն։*

*Ովսաննա Որդւոյ Դաւթի, օրհնեալ որ գայն յանուն Տեառն, Աստուած մեր եւ Տէր, եւ երեւեցաւ մեզ։ Ովսաննա ի բարձունս։*

---

[1] Մի սուրբ. մի Տէր. մի Յիսուս Քրիստոս։

*ԺԹ. Եւ յետ այսորիկ ճաշակեսցէ եպիսկոպոսն, ապա երիցունքն եւ սարկաւագունք եւ դպրակարդացք եւ սաղմոսողքն եւ ճգնաւորք, եւ ի կանանց՝ կանայք սարկաւագք եւ կուսանք եւ այրիք, ապա մանկտին եւ ապա ամենայն խուռն ժողովուրդն ըստ կարգի եւ պարկեշտութեամբ եւ երկիւղածութեամբ առանց աղմկոյ:*

*Եւ եպիսկոպոսն տացէ զպատարագն, եւ ասասցէ.* **Մարմին Քրիստոսի։**

*Եւ որ ընդունին՝ ասասցէ.* **Ամէն։**

*Իսկ սարկաւագն կալցի զբաժակն, եւ ի տալն իւրում՝ ասասցէ.* **Արիւն Քրիստոսի, բաժակ կենաց։**

*Եւ որ ըմպէն՝ ասասցէ.* **Ամէն։**

*Եւ սաղմոս ասասցի երեսներորդ երրորդ*[1] *ի հաղորդել այլոցն ամենեցուն: Եւ յորժամ՝ ամենեքին հաղորդին արք եւ կանայք, առեալ սարկաւագացն զմնացորդսն՝ բերցեն ի ներքս ի սարկաւագանոցն:*

*Ի. Եւ ի կատարել սաղմոսողգին ասասցէ սարկաւագն.*

**Հաղորդեալք պատուական մարմնոյ եւ պատուական արեանն Քրիստոսի, գոհասցուք զնմանէն՝ որ արժանի արար զմեզ հաղորդել սրբոց խորհրդոց, եւ աղաչեսցուք՝ մի ի դատապարտութիւն (Ա. Կոր. ԺԱ. 29.) այլ ի փրկութիւն մեզ լինել, յօգտակարութիւն հոգւոյ եւ մարմնոյ, ի պահպանութիւն աստուածպաշտութեան, ի թողութիւն մեղաց, ի կեանս յաւիտենից՝ որ գալոց է։**

**Յոտն կացցուք։**

**Շնորհօքն Քրիստոսի՝ զանձինս Աստուծոյ եւ Քրիստոսի նորա յանձն արասցուք։**

*ԻԱ. Եւ եպիսկոպոսն գոհասցի:*

**Տէր Աստուած ամենակալ, Հայր Քրիստոսի քոյ օրհնելոյ Որդւոյ, որ լսես այնոցիկ՝ ոյք ուղղութեամբ կարդան առ քեզ, որ եւ զլռելոցն գիտես զխնդիրս. գոհանամք զքէն, զի արժանաւորս արարեր զմեզ հաղորդել սրբոց քոց խորհրդոց, զոր շնորհեցեր մեզ ի կատարումն գիտութեան բարւոք ի մէնջ ճանուցելոյ, ի պահպանութիւն աստուածպաշտութեան, ի թողութիւն յանցանաց, զի անուն Քրիստոսի քոյ կոչեցեալ է ի վերայ մեր եւ քեզ եմք անկ, որ մեկնեցեր զմեզ յամպարշտացն հաղորդութենէ, միացո զմեզ ընդ այնոսիկ՝ որ քեզն նուիրին, հաստատեա զմեզ ի ճշմարտութեան գալստեամբ Հոգւոյն սրբոյ. զանգիտացեալսն յայտնեա, զպակասեալսն ած ի լրումն, զճանուցեալսն զօրացո. զքահանայս պահեա անբիծս ի քում պաշտամանն, զթագաւորս պահեա ի խաղաղութեան. զօդս քաղցրախառն, զպտուղս՝ քաջաբերս, զաշխարհ՝ հզօր տեսչութեամբ. զազգս որ կամին ընդ պատերազմ՝ ցածո[2]. զմոլորեալսն դարձո. սուրբ արա զժողովուրդ քո. ոյք ի կուսութեան են՝ լեր պահապան, ոյք յամուսնութեան են՝ պահեա ի հաւատս, ոյք ի ժուժկալու-**

[1] Սղմ. ԼԳ. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ։ | [2] Սղմ. ԿԷ. 32։

թեան են՝ զօրացս, հաստ ի չափ զողջոյն, զնորոգ կատարեալն հաստատեա, զերախայս ուստ խրատելով՝ եւ խորհրդականութեան արժանի արա, եւ զմեզ զամենեսին ժողովեա յերկնից արքայութիւնն Քրիստոսիւ Յիսուսիւ Տերամբ մերով, ընդ որում քեզ փառք, պատիւ եւ պաշտօն, եւ. սրբոյ Հոգւոյն յաւիտեանս. ամէն։

*ԻԲ. Եւ սարկաւագն ասասցէ.*

Աստուծոյ, Քրիստոսիւ նորա, խոնարհեցարուք եւ օրհնեսջիք։

*Եւ եպիսկոպոսն արասցէ ի վերայ նոցա աղօթս, եւ ասասցէ.*

Աստուած ամենակալ, որ ճշմարիտ Աստուածդ ես եւ առանց համեմատութեան, որ ամենայն ուրեք ես եւ ամենայնի մերձ ես, եւ ոչ ի միում իմիք կաս իբրեւ ի նմին բովանդակեալ, որ տեղեօք ոչ սահմանիս, որ ժամանակօք ոչ հնանաս, որ յաւիտենիւք ոչ անցանես, որ բանիւք ոչ հրապուրիս, որ չես ընդ ծնընդեամբ, որ չես նիազ ի պահպանութենէ, որ գեր ի վերոյ ես ապականութեան, որ փոփոխման չես ընդունիչ, որ բնութեամբ առանց այլայլելոյ ես, որ բնակեալդ ես ի լոյս անմատոյց (Ա. Տիմ. Զ. 16), որ ի բնէ անտես ես, որ ճանաչիս յամենայն բանաւոր բնութեանց՝ որք բարւոք մտօք խնդրեն զքեզ, Աստուած Իսրայէլի՝ որ ճշմարիտն տեսանէ, ժողովրդեան քոյ՝ որ ի Քրիստոս հաւատայ. լուր ինձ հաշտութեամբ վասն անուան քոյ, եւ օրհնեա զսոսա՝ որք խոնարհեցուցին քեզ զպարանոցս իւրեանց, եւ տուր սոցա զխնդրուածս սրտից սոցա զօգտակարսն, եւ մի զոք ի սոցանէ առնիցես ընկեցիկ[1] յարքայութենէ քումմէ, այլ սրբեա զսոսա. ամրացո, պատսպարեա, ընկալ, յօտարէն փրկեա եւ յամենայն թշնամւոյ. զտունս նոցա պահեա, զմուտս սոցա եւ զելս ամրացո. զի քեզ փառք,[2] գովութիւն, մեծվայելչութիւն, պաշտօն, երկրպագութիւն, եւ քում Որդւոյդ Յիսուսի, Քրիստոսի քում Տեառն մերում եւ Աստուծոյ եւ թագաւորի, եւ սրբոյ Հոգւոյն, այժմ եւ. միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

*ԻԳ. Եւ սարկաւագն ասասցէ.* Արձակեսջիք խաղաղութեամբ։

*Զայս վասն խորհրդական պաշտաման կարգեցաք մեք առաքեալքս մեզ եպիսկոպոսացդ եւ երիցանց եւ սարկաւագաց:[3]**

---

[1] խոտան։

[2] Փիթր.՝ Καὶ μετὰ σὲ καὶ διὰ σὲ (iterum Vatic. 2, qui pergit) τῷ παιδί σου Ι. Χρ. τῷ Κ. ἡμ. καὶ βασιλεῖ (Θεῷ omisso) δι' οὗ σοι ἐποφείλεται παρὰ πάσης λογικῆς καὶ ἁγίας φύσεως ἡ ἐπάξιος εὐχαριστία ἐν ἁγίῳ πνεύματι. Hic multa par malam cujusdam ariani fraudem violari res per se clamat.

[3] Աւելէ եւսը Երեկոյեան Աղօթքին մէջ (Գլ. 36.) եպիսկոպոսը կ'ըսէ. Ὁ ἄναρχος Θεὸς καὶ ἀτελεύτητος, ὁ τῶν ὅλων ποιητὴς διὰ Χριστοῦ καὶ κηδεμών, πρὸ δὲ πάντων αὐτοῦ Θεὸς καὶ Πατὴρ, ὁ τοῦ Πνεύματος Κύριος, καὶ τῶν νοητῶν καὶ αἰσθητῶν βασιλεύς.

* Յակոբու անուամբ պատարագաց վրայ յետոյ առիթ պիտի ըլլայ խօսելու, հոն կը տեսնենք նաեւ ուրիշ պատարագի մը հայերէն թարգմանութիւնը: ՀՐՏՐ.

*Առ ուսումն քիչ կարեւոր չըլլալուն՝ Առաքելական Սահմանադրութեանց Բ. գրքին մէջ (Գլ. 57. ըստ Փիթրա) եղածն ալ կը յարենք հոս այսպէս։*

---

## Գ.

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆՑ Բ. ԳՐՔԻՆԸ

*(Գլ. ծէ. տպգր. Փիթրա. 1864, երես 203։)*

*Յորժամ ժողովեսցես (եպիսկոպոսդ) զեկեղեցին Աստուծոյ, իբրեւ առաջնորդ մեծի իրիք նաւու՝ բազում իմաստութեամբ հրաման տացես կատարել ժողովոցն, ազդ առնելով սարկաւագացն իբրեւ նաւավարաց՝ սահմանել տեղիս եղբարցն իբրեւ նաւամտից՝ բազում հոգաբարձութեամբ եւ պարկեշտութեամբ։*

*Եւ նախ, տաճարն լիցի երկայնաձեւ ընդ արեւելս, եւ ունիցի յերկուց կողմանց՝ կահուց տունս կամ սրսկապանս՝ ընդ արեւելս, եւ նաւու նման իցէ։ Կացցէ ի միջի աթոռ եպիսկոպոսին, եւ յաջմէ եւ յահեկէ նորա նստցի քահանայութիւնն, եւ սարկաւագունք առընթեր կացցեն զգաստք եւ թեթեւ զգեցեալք, զի նմանեն նաւազաց եւ որոց թիավարեն։ Ըստ նոցին տեսչութեամբ ի մեւս կողման նստուսցին ժողովրդականքն ամենայն հանդարտութեամբ եւ կարգաւ, եւ կանայք եւս մեկուսի նստուսցին լուռ եւեթ կալով։ Ի միջի անդ դրակարդացն ի բարձու ուրեք տեղւոջ կացեալ ընթերցցի զգիրսն Մովսէսի, եւ զՅեսուայ Նաւեայ, զԴատաւորացն եւ զԹագաւորաց, զՄնացորդացն եւ զդարձին այսրէն, հանդերձ սոքիմբ զՅոբայն եւ զՍողոմոնի զգիրսն եւ զմետասանն մարգարէիցն։ Իբրեւ երկու ընթերցուածք կատարեսցին, այլ ոք զԴաւթի երգսն սաղմոսեսցէ, եւ ժողովուրդն զծայրս ստիքացն կցեսցէ սաղմոսելով։ Յետ այսորիկ մեր Գործք ընթերցցին եւ Թուղթքն Պաւղոսի գործակցին մերոյ՝ զորս առաքեաց եկեղեցեացն ըստ ազդեցութեան Հոգւոյն սրբոյ։ Եւ յետ այսր ամենայնի սարկաւագ կամ երէց ընթերցցի զԱւետարանն՝ զորս ես Մատթէոս եւ Յովհաննէս աւանդեցաք ձեզ, եւ զորս գործակիցք Պաւղոսի ընկալեալ թողին ձեզ՝ Ղուկաս եւ Մարկոս. եւ յորժամ յընթեռնուլ իցէ աւետարանն, ամենայն երիցունք եւ սարկաւագունք եւ ժողովուրդն համօրէն յոտն կացցեն բազում հանդարտութեամբ. զի գրեալ իսկ է. Լուր եւ լուր, Իսրայէլ. եւ դարձեալ՝ Թէ իսկ դու յոտն կաց եւ ունկն դիր նմին։*

*Եւ զկնի խրատեսցեն մխիթարելով երիցունք զժողովուրդն, մէն մի ի նոցանէ, այլ մի ամենեքեան, եւ յետ ամենեցուն եպիսկոպոսն՝ որ նաւապետի նմանէ։*

*Կացցեն դռնապանք ի մուտս արանցն պահել զելուտս, եւ սարկաւագունք ի մուտս կանանց ըստ օրինակի առաջապահաց նաւորդացն, քանզի եւ*

ի վրան ժամուն[1] նոյն կարգ պահէր եւ ի տաճարին Աստուծոյ։ Իսկ եթէ գտցի ոք նստեալ ի տեղւոջ որ ոչ նմա անկ իցէ՝ կշտամբեսցի ի սարկաւագէն իբրեւ յառաջնորդէ նաւու, եւ տարցի ի տեղին որ նմա պատշաճ իցէ. քանզի ոչ եթէ նաւի միայն՝ այլ եւ գաւթի ոչխարաց նմանէ եկեղեցի։ Զի զօրօրինակ հովիւք զիւրաքանչիւր յանասնոցն, զայծեացն եւ զօչեաց, ըստ ազգի եւ ըստ հասակի զետեղիցեն, եւ անձնիւր ի նոցանէ նմանին ի նմանին դիմէ. նոյնպէս եւ յեկեղեցւոջ երիտասարդք առանձինն նստցին, եթէ կայցէ տեղի, ապա թէ ոչ՝ կացցեն կանգուն. իսկ յառաջադէմքն հասակաւ նստուսցին ի կարգին։ Իսկ զմանկտին առ իւրեանս առցեն նոցին հարք եւ մարք՝ կացեալ յոտս։ Դարձեալ եւ մանկամարդք առանձինն, եթէ կայ տեղի, ապա թէ ոչ՝ կացցեն յառաջոյ[2] կանանցն. ամուսնացեալքն եւ որք յորդեծնութեան՝ առանձինն կացցեն. կուսանք եւ այրիք եւ պառաւունք յառաջոյ քան զամենայն կանայս կացցեն կամ նստցին։ Իսկ տեղեացն տեսուչ սարկաւագն կացցէ, զի իւրաքանչիւր ոք ի մտելոյն յանձնիւր տեղիս երթիցեն, եւ մի անդէն առ դրամբն ի մուտն նստիցին։ Նոյնպէս դիտեսցէ սարկաւագն զժողովուրդն՝ զի մի լեցի ումեք շշնջել կամ նիրհել կամ ծիծաղել կամ ակնարկել. զի յեկեղեցւոջ պարտ եւ պատշաճ է իմաստութեամբ եւ զգաստութեամբ եւ արթնութեամբ կալ ձգտեալ զլսելիս առ բանն Տեառն։

Եւ յետ այսորիկ միաբան յարուցեալք ամենեքին, եւ ընդ արեւելս նայելով, յետ երախայիցն եւ ապաշխարողաց արտաքս ելանելոյ, մատուսցեն աղօթս առ Աստուած՝ որ նստին յերկինս երկնից ընդ արեւելս, (Սղմ. ԿԷ. 34.) յիշելով եւ զհին բնակութիւնն դրախտին ընդ արեւելս՝ ուստի առաջին մարդն անսաստելով հրամանին՝ հրապուրեալ օձին խրատու՝ ի բաց մերժեցաւ։

Իսկ յետ աղօթիցն կէսք ի սարկաւագացն բերելոյ նուիրաց Գոհութեանն ուշ ունիցին, սպասաւորելով մարմնոյ Տեառն երկիւղիւ, եւ այլք շրջելով դիտեսցեն զամբոխն, եւ ի հանդարտութեան կալցին զնոսա։

Եւ ասասցէ՝ որ առընթեր քահանայապետին կայցէ սարկաւագն՝ ցժողովուրդն. Մի ոք հակառակ ուրուք. մի ոք կեղծաւորութեամբ։ Ապա եւ ողջոյն տացեն միմեանց՝ արք արանց եւ կանայք կանանց՝ զհամբոյրն որ ի Տէր է. այլ մի ոք նենգութեամբ, որպէս Յուդաս զՏէրն համբուրիւ մատնեաց։

Եւ յետ այսորիկ աղօթս մատուսցէ սարկաւագն վասն ամենայն եկեղեցւոյ եւ համօրէն աշխարհի եւ որ ի նմին կողմանք եւ վիճակք, վասն քահանայից եւ իշխանաց, վասն քահանայապետին եւ թագաւորին, համօրէն խաղաղութեան։

Եւ յետ այնորիկ եպիսկոպոսն աղօթս առնելով ի վերայ ժողովրդեանն վասն խաղաղութեան, օրհնեսցէ զնա, որպէս եւ Մովսէսն հրաման ետ քա-

1 Ի խորանին վկայութեան։

2 Դէմ յանդիման։

հանայիցն օրհնել զժողովուրդն այսու բանիւք. Օրհնեսցէ զքեզ Տէր եւ պահեսցէ զքեզ. երեւեցուսցէ զերեսս իւր ի քեզ, եւ տացէ քեզ խաղաղութիւն. (Թուոց, Զ. 24:) Ապա աղօթս արասցէ եւ եպիսկոպոսն, եւ ասասցէ. Կեցո զժողովուրդ քո, Տէր, եւ օրհնեա զժառանգութիւն քո՝ զոր ստացար եւ արարեր սեպհական՝ պատուական արեամբ Քրիստոսի քոյ, եւ կոչեցեր թագաւորութեան քահանայութիւն եւ ազգ սուրբ:

Յետ այսր ամենայնի եղիցի զենումն (θυσία)՝ յոտն կալով ամենայն ժողովրդեանն եւ աղօթս մատուցանելով հանդարտութեամբ:

Եւ յորժամ մատուցի, հաղորդեսցի իւրաքանչիւր դաս ուրոյն՝ տէրունական պատուական մարմնոյն եւ պատուական արեանն կարգաւ՝ համեստ եւ բարեպաշտութեամբ իբրեւ առ մարմին Թագաւորի մատուցեալք, եւ կանայք ծածկեալ ունելով զգլուխս՝ որպէս վայելէն իսկ կանանց կարգի՝ այնպէս մատիցեն: Այլ պահեսցին դուռքն, զի մի ոք անհաւատ ի 'ներքս մտցէ կամ անմաքուր:[1]

---

Ահաւասիկ այս երկու առաջին համբաւաւոր Սահմանադրութեանց առաջին պատարագը՝ որն որ շատ անգամ Կղեմեան (Clementina) ալ կ'ըսուի, վասն զի Առաքելոց Սահմանադրութեանց գիրքն՝ իբրեւ ի ձեռն Կղեմայ (Հռոմայեցւոյ, աշակերտին Պօղոսի եւ յաջորդին Պետրոսի) տրուած՝ վերնագրուած է: Մենք կը կարծենք որ այս պատարագը լաւագոյն եւ փառաւորագոյն պէտք էինք ունենալ քան զոր հիմայ ունինք. վասն զի՝ ճշմարիտն ըսելով՝ փոփոխութիւն կրած կը կարծենք. սկզբնականն անաղարտ եկած չենք համարիր, այլ ընդմիջարկեալ (interpolé) քիչ շատ:

Շատ անգամ յիշուած "Առաքելոց Սահմանադրութիւնք„ ըսուած գիրքը, որ բաւական քանակութիւն ունի, որ եւ մեր ոչ նորերուն եւ ոչ հիներուն ծանօթ եղած է, մի միայն "Առաքելոց Կանոնք„էն ի զատ՝ որոնք այս գրքէն արդէն 5րդ դարուն հանուած էին, հաւանականաբար 6րդ դարուն հայերէն թարգմանուած ըլլալով՝ Իմաստասիրին Հաւաքման մէջ մնացած են. ասկէ զատ անոր մէկ հետքը երեւան ելած չէ: Յունաց մէջ բաւական հին է. 4րդ դարուն մէջ երեւան կու գայ. Եւսեբիոս զասոնք, ինչպէս կրնայ կարծուիլ, կը յիշէ իբրեւ αἱ λεγόμεναι διδαχαί, նոյնպէս ալ Աթանաս իբրեւ ἡ διδαχὴ τῶν ἀποστόλων ըսելով.* Եպիփանու քով աւելի որոշակի կ'երեւան իբրեւ αἱ τῶν ἀπο-

---

[1] Անկնիք:

* Հեղինակին ծանօթ չէր կրնար ըլլալ նորերս գտնուած գրութիւնն Διδαχὴ τῶν δώδεκα ἀποστόλων ("Վարդապետութիւն ԺԲ Առաքելոց„), զոր նոյնպէս Ս. Հայրք յաճախ կը յիշեն: Այս կորսուեալ գործքը գտաւ յոյն մետրապոլիտն Նիկոմեդիոյ Պրիեննիոս եւ հրատարակեց. (Կ.Պոլիս 1883,) եւ մեծ աղմուկ հանեց բովանդակ Եւրոպիոյ մէջ բազմաթիւ քննութեանց նիւթարկուելով. (Տես. ի միջի այլոց Osk. v. Gebhardt, Lehre der zwölf Apostel etc. Berlin 1884.) Ըստ ոմանց Ա դարէն է գրութիւնս եւ շարունակութիւն Բառնաբայ թղթին. ըստ այլոց՝ Բ դարու կէսէն: Յամենայն դէպս ամենահին գրութիւններէն մին է, որուն մէջ կայ նաեւ պատարագի նկատմամբ շատ բան, բայց ի մասնաւորի Հաղորդութեան բաշխման մասն ընդարձակ, այնպէս որ գիտնականք արդէն ձեռնարկած են վերակազմելու սոյն գրութեան հեղինակին ծանօթ պատարագը: Արդիւնքն այն եղած է՝ որ այն պատարագը բաւական տարբեր ցուցուեցաւ "Առաքելոց Սահմանադրութեանց„ պատարագէն: Սակայն Փրոփսթ իւր նորագոյն գրութեան մէջ կը ջանայ ջրել այս կարծիքը եւ հաստատել՝ որ ազ-

στώλον διατάξεις, գրքին սկիզբն ալ յիշելով "Տունկ յԱստուծոյ եկեղեցի:" Վերջապէս Ձեռագրաց մէջ անունն կը կրեն διατάξεις կամ διαταγαί.

Թէ ասոնց յօրինողը Առաքեալ մը՝ կամ, ինչպէս հոն կ'ըսուի, բոլոր Առաքեալք չեն, իրենց պարունակածէն յայտնի է. եւ յիշեալ հայերէնը նոյնպէս ճանչցուեցաւ երեւան ելած ատենէն. Թէպէտ եւ՝ ինչպէս Աթանաս կ'ըսէ՝ քանի մը եկեղեցեաց մէջ կարդացուեր են:

Եկեղեցական դատաստանը հաւասար չէ: Գելասիոսի վճիռը կ'ըսէ Կանոնաց համար՝ Liber Canonun Apostolorum apocryphus. Յունաց Տրուլլեան ժողովը կը սահմանէ. "Ութսուն եւ հինգ Կանոնք սրբոց Առաքելոց այժմ եւ առ յապա հաստատուն եւ անշարժ մնասցեն. բայց քանզի ի նոսին հրամայի մեզ եւ զՍահմանադրութիւնս նոցին Առաքելոց զժողովեալսն ի Կղեմայ ընդունել՝ զորս հերետիկոսայքն վաղ իսկ անհարազատ յաւելուածովք՝ որք օտար են յեկեղեցւոյ՝ խանգարեցին, եւ զպայծառ պատկեր աստուածեղէն վարդապետութեան նսեմացուցին, պատշաճ համարեցաք զՍահմանադրութիւնս զայսոսիկ ի համարոյ Գրոց սրբոց ի բաց հանել." (692ին:) Ըստ այսմ խօսած են Յունաց իրաւագէտք հետզհետէ:

Արեւմտեայց համար 16րդ դարուն ձեռագիրներէն հանուած տպագրուեցաւ, ուրկէն լատին Թարգմանութեամբ մէկտեղ. ասոնց մէջ նշանաւոր է Կոտելերիոս (Cotelerius): Նորերս Կարդ. Փիթրա, բոլոր Եւրոպայի գրատունները պտըտելէն ետքը՝ աւելի զգուշաւոր տպագրութիւն մը՝ անոնց եւ բազմաթիւ Վատիկանեան ձեռագրաց վրայէն յոյն եւ լատին Թարգմանութեամբ հանեց ի Հռոմ:

Բայց մեզի հիմա պէտք չկայ աս գրքին բոլոր պարունակածին վրայ տարածուիլ. բաւական է մեզի վերջին Ութերորդը կամ երկու վերջինները՝ որոնք ըստ քննչաց ժամանակաւ ետքէն վրայ եկած կ'երեւան. ասորական Թարգմանութիւնը դեռ զատոնք ունեցած չէ. վերջին գիրքն ուրիշ բան չէ՝ բայց եթէ հին աղօթամատոյց եւ մեր շատ անգամ յիշած պատարագը: Ասոնք բաւական են մեր ընելիքին:

Արդ աս Ը. գրքին, գլ. 5. եպիսկոպոսի ձեռնադրութեան աղօթից նկատմամբ, ըստ այլեւայլ Օրինակաց, կրկին տարբեր ձեւեր ունինք: Նախ Անգղիական Barocciana մատեանն էր՝ որ մի միայն աս ձեւն ունէր՝ մէկալներէն տարբեր. հիմա Փիթրա երկրորդ մատեան մ'ալ գտաւ ի Վատիկան: Զատիկայ հնութեան քիչ ճանչցողներէն ոմանք՝ ուրիշ Սահմանադրութեանց հասարակ Օրինակներուն մէջ գտնուած ձեւին համառօտութիւնը կը համարին անհմտաբար, զորոնք Uelzerius իրաւամբք կը հերքնէ. Թէպէտ Փիթրա վերջապէս կը դառնայ ճանչնալու Թէ հարազատագոյնն է, եւ Թէ երկարագոյնը յաւելուածներ ըլլալով եղած է:

Ահա աս անհամեմատ վեհ ճաշակ ունեցող աղօթքն ըստ Barocci. եւ Վատիկան. մատենից (Pitra, p. 50—51):

“Ո՛ Աստուած եւ Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, Հայր ողորմութեանց եւ Աստուած ամենայն մխիթարութեան, որ ի բարձունս

դակից են երկուքն. (տես Liturgie des vierten Jahrhunderts, § 85, p. 324—329.)

ՀՐՏՐ.

հանգուցեալ ես եւ զխոնարհս տեսանես,[1] որ ճանաչես[2] զամենայն մինչ չեւ լեալ։

Դու, որ տաս սահմանս եկեղեցւոյ բանիւ շնորհաց քոց, որ յառաջագոյն սահմանեցեր զազգ արդար ի սկզբանէ զսկսեալն յԱբրահամէ, եւ քահանայս կացուցեր յայնժամ՝ սրբութիւն քո[3] ոչ թողեր առանց պաշտաման[4] որ ի սկզբանց աշխարհի հաճոյ եղեն քեզ, յորս ընտրեցեր փառաւոր լինել։[5]

Եւ արդ հեղ զառ ի քէն զօրութիւն Հոգւոյ պետութեան քոյ՝ զոր ի ձեռն սիրելոյ Որդւոյ քոյ Յիսուսի Քրիստոսի պարգեւեցեր սրբոց քոց Առաքելոց, որ կանգնեցին զեկեղեցի ի տեղւոջ սրբութեան ի փառս եւ յօրհնութիւն անպակաս անուան քոյ, սրտագէտդ ամենայնի։

Տուր ի ծառայս քո յայս՝ զոր ընտրեցեր յեպիսկոպոսութիւն քո սուրբ եւ քահանայապետանալ քեզ անարատ, պաշտել[6] ի գիշերի եւ ի տուընջեան, եւ անպակաս հաճոյ լինել երեսաց քոց եւ մատուցանել քեզ զընծայս սրբոյ եկեղեցւոյ քոյ։

Եւ Հոգւով քահանայապետականաւ ունել իշխանութիւն թողուլ զմեղս ըստ պատուիրանի քում, տալ ժառանգաւորս ըստ կարգի քում, արձակել զամենայն կապանս ըստ իշխանութեանն զոր ետուր Առաքելոց, եւ հաճոյ լինել քեզ հեզութեամբ եւ սուրբ սրտիւ։„

Ասանկ հիանալի աղօթքը՝ ետքէն ձեռք մտնելով, հետեւեալ ձեւն ու ընդարձակութիւնն առած եւ այնպէս խոթուած է Սահմանադրութեանց Ը. գրքին մէջ, ինչպէս առհասարակ Օրինակներն ունին։

Զանց կ'ընենք յունարէնը՝ դնելով լատին թարգմանութիւնը՝ ինչպէս որ Փիթրա ունի։ Փիթրա իւր գլոց ծանօթութեան մէջ (p. 50, ad l. 23) սա դիտողութիւնը դրած է. Jam nobilissimae invocationis duplicem formulam hinc et inde apposuimus, breviorem ex duobus codicibus Vaticano 3 et Barocciano haustam, prolixiorem ex aliis Codicibus, ne Barberiniano quidem excepto, et vulgatis libris.

Որ եսդ, Տէր Տէր Աստուած, միայնդ անծին (ἀγέννητος) եւ անթագաւոր (ἀβασίλευτος), որ եսդ միշտ (ὁ ἀεὶ ὤν), եւ յառաջ քան զյաւիտեանս ունիս գոյութիւն, որ անկարօտ ես իմիք (ὁ παντὶ ἀνενδεής), եւ որ քան զամենայն պատճառ եւ զլինելութիւն (զծնունդ) վերագոյն ես, որ միայն ճշմարիտ Աստուած, որ միայն իմաստուն, որ եսդ միայն բարձրեալ եւ բնութեամբ աներեւոյթ, որոյ գիտութիւն անսկիզբն (ἄναρχος), մի միայն

Qui es, Dominator Domine, Deus, omnipotens, solus ingenitus ac dominator immunis; qui semper es, et ante saecula subsistis, qui sufficis omnemque causam, atque ortum superas; qui solus verus, solus sapiens, solus es altissimus; cuius nemo naturam vidit; cuius scientia, principii expers; qui solus bonus et cum nemine comparandus, qui omnia nosti antequam fiant, cui occulta cognita sunt,

---

[1] Հայիս ի խոնարհս։

[2] Գիտես։

[3] Կամ՝ զսրբութիւն քո։

— Բնագիրն է այսպէս. καὶ ἱερεῖς καταστήσας τότε ἁγίασμά σου μὴ καταλιπὼν ἀλειτούργητον. Հայերէն լաւագոյն է կարծենք կարդալ՝ "Զսրբութիւն քո ոչ թողեր,„ եւն։ ՀՐՏ.

[4] Անպաշտօնեայ։

[5] Կամ՝ փառաւորել։

[6] Կամ՝ կատարել պաշտօն։

բարի եւ անհամեմատ (ἀσύγκριτος), որ զամենայն տեսանես մինչչեւ լեալ նոցա, որ զծածկեալս գիտես, որ անմատոյց ես, որ չունիս տէր, Աստուած եւ Հայր Միածնի Որդւոյ քոյ՝ Աստուծոյ եւ Փրկչին մերոյ, որ արարիչդ ես ամենայնի ի ձեռն նորա (նովաւ), որ տեսուչ եւ խնամակալ ես. ով Հայր գթութեանց եւ Աստուած ամենայն մխիթարութեան, որ ի բարձունս բնակեալ ես եւ հայիս ի խոնարհս։

Դու, որ տաս սահմանս եկեղեցւոյ մարմնաւոր գալստեամբ Քրիստոսի քոյ՝ վկայութեամբ Մխիթարչին ի ձեռն Առաքելոց քոց եւ մեր շնորհիւ քով կացելոց եպիսկոպոսացս. որ յառաջագոյն սահմանեցեր ի սկզբանէ քահանայս ի վերակացութիւն ժողովրդեան քո, զԱբէլ յառաջինն, զՍէթ եւ զԵնովս եւ զԵնովք եւ զՆոյ եւ զՄելքիսեդեկ եւ զՅոբ. որ ցուցեր զԱբրահամ եւ զայլ նահապետսն հանդերձ հաւատարիմ պաշտօնէիւք քովք Մովսիսիւ եւ Ահարոնիւ եւ Եղիազարաւ եւ Փենեհեսիւ, եւ ի նոցունց յառաջ մատուցեր իշխանս եւ քահանայս ի խորանին վկայութեան. որ զՍամուէլ ընտրեցեր քահանայ եւ մարգարէ. որ զսրբութիւն քո ոչ թողեր անպաշտօնեայ եւ հաճեցար փառաւորել որովք ընտրեցերդ։

Ինքնին եւ արդ միջնորդութեամբ Քրիստոսի քոյ հեղ ի ձեռն մեր զշնորհս Հոգւոյ պետութեան քոյ՝ որ սպասաւորէ սիրելւոյ Որդւոյ քոյ Յիսուսի Քրիստոսի, որ պարգեւեցաւ կամօք քո յաւիտենական Հօրդ։

Տուր յանուն քո, սրտագէտ Աստուած, ծառայի քում այսմիկ զոր ընտրեցեր յեպիսկոպոսութիւն, հովուել զհօտ քո սուրբ եւ քահանայապետանալ քեզ, անարատ կատարելով պաշտօն ի գիշերի եւ ի տուընջեան, եւ հաշտ առնելով զերեսս քո ժողովեսցէ զթիւ փրկելոցն, եւ մատուցանել քեզ զընծայս սրբոյ եկեղեցւոյ քոյ։

Տուր նմա, Տէր ամենակալ, Քրիստոսիւ քով զհաղորդութիւն Հոգւոյն սրբոյ՝ ունել իշխանութիւն թողլոյ զմեղս ըստ պատուիրանի քում, տալ ժառանգաւորս ըստ կարգի քում, արձակել զամենայն կապանս ըստ իշխանութեանն՝ զոր ետուր Առաքելոց, եւ հաճոյ լինել քեզ հեզութեամբ եւ սուրբ սրտիւ առանց յանցանաց, անարատ եւ անբասիր։

Զի մատուսցէ քեզ սուրբ եւ անարիւն պատարագ՝ զոր Քրիստոսիւ կարգեցեր զխորհուրդս նորոց կտակարանաց ի հոտ անուշից ի ձեռն սրբոյ Որդւոյ քոյ Յիսուսի Քրիստոսի



inaccessus, domino carens; Deus et Pater unigeniti Filii tui, Dei ac servatoris nostri, conditor universorum per ipsum, provisor, procurator, Pater misericordiarum et Deus totius consolationis, qui in altis habitas et humilia respicis.

Tu, qui dedisti regulas Ecclesiae per adventum in carne Christi tui, testante Paracleto per Apostolos tuos ac nos, qui gratia tua adstamus episcopi; qui ab initio constituisti sacerdotes, qui populo tuo praeessent, Abel in primis, Seth et Enos et Enoch et Noë et Melchisedech et Job; qui declarasti Abraham caeterosque Patriarchas cum fidelibus tuis famulis Moyse et Aaron, Eleazar et Phinees; qui ex ipsis creasti principes et sacerdotes in tabernaculo testimonii; qui Samuelem elegisti in sacerdotem et prophetam, nec tuum sine ministro sanctuarium reliquisti; qui benedicis iis quos elegisti ad glorificandum.

Ipse nunc quoque, mediatore Christo tuo, per nos infunde virtutem moderatoris tui Spiritus, qui ministratur dilecto Filio tuo Iesu Christo, quemque sanctis Apostolis, te volente qui aeternus Deus es, donavit.

Da in nomine tuo, cognitor cordis Deus, huic tuo famulo, quem elegisti in episcopatum, pascere sanctum tuum gregem et pontificis munere fungi, sine reprehensione die noctuque ministrantem, qui dum propitium facit vultum tuum, congreget numerum eorum qui salvi fiunt, et offerat tibi dona sanctae Ecclesiae tuae. Tribue illi, Dominator omnipotens per Christum tuum participationem Spiritus sancti, ut habeat potestatem remittendi peccata secundum mandatum tuum, conferendi ordines iuxta praeceptum tuum, sed et solvendi omne vinculum iuxta eam quam Apostolis tribuisti potestatem, ita demum tibi placendi in mansuetudine et mundo corde, ut sine culpa, sine labe, sine crimine, tibi purum offerat et incruentum sacrificium, quod per Christum instituisti, mysterium novi testamenti, in odorem suavitatis, per sanctum Filium tuum Iesum Christum Deum ac Salvatorem nostrum, per quem tibi gloria, honor et veneratio in sancto Spiritu, nunc et semper et in saecula saeculorum.

եւ Փրկչին մերոյ՝ որով քեզ փառք, պատիւ եւ պաշտօն Հոգւով սրբով այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Et postquam ita oraverit, reliqui sacerdotes respondeant: Amen. Atque cum eis omnis populus.

Քանի մը յաջորդ աղօթքներ ալ, քահանայութեան եւ սարկաւագութեան աղօթք, նոյն Ը. գլքին մէջ աս երկուութիւնն աւելի կամ պակաս ունին, ինչպէս օրինակաց տարբերութիւնն առ Փիթրայի կը ցուցընէ։

Սակայն գիտենք որ ան ձեռքն՝ որ զասոնք աս կերպարանաց բերած աս Ը. գլքին ժողված է, դրած է հոն մեր պատարագն ալ, ինչպէս ըսինք։ Ա՛լ արեւուլուսոյն պէս պայծառ է՝ որ նոյն գործողութիւնը նմանապէս ասոր վրայ ալ կատարուած է։ Հոս ալ քիչ շատ ստորին ճաշակի բերուած է շատ բան. նոյն ճոխացուցմունք, սուրբ Գրոց մեթրքէն յաւելեալք, բազմաբանութիւնք, ճարտարմտութիւնք դպրոցականք, որոնցմով նախնական վեհութիւնն ու ազնուութիւնը կորսուած է։ Բայց — որն որ աւելի շօշափելի եւ նկարագրական է — ինչպէս աղօթքներուն մէջ, նոյնպէս պատարագին մէջ վարդապետական երեւոյթներն են ծայրէ ծայր Արիոսեան խորամանգութիւն սփռած, ոչ միամիտ կերպով նախնիկեական պարզութեամբ, ինչպէս ոմանք կարծեցին մեկնել, այլ աշխատուած ամբողջ դրութիւն մը ըստ Եւնոմեան ոճոյ լեռւլի 4րդ դարուն ընթացքին. նոյն իրենց բառերը, ինչպէս Գրիգոր Նազիանզացի կ՚ըսէ, ἄναρχος եւ ἀγέννητος ամենայն սարքը, թէ յիշեալ աղօթքներուն եւ թէ պատարագին մէջ՝ որ կրնայ սկզբնաբար Անտիոքայ մեծ եկեղեցւոյնն ըլլալ։ Յոյնք, այս ինքն ի Տրուղոն ժողված Հայք, ոչինչ ընդդէմ է որ չէ թէ տարտամ խորհրդածութեամբ, այլ ստոյգ իրաց գիտութեամբ կ՚ըսէին, ինչպէս տեսանք, թէ հերեսիովտայք Սահմանադրութիւնները յաւելուածով խանգարեցին՝ պատարագն ալ անշուշտ հետն իմանալով. անոր համար ալ (Կան. 33.) Հայոց անապակաւ պատարագելուն դէմ չուզեցին զանիկայ կոչել. գոհ եղան ի գործածութեան եղած Բարսղի պատարագին վկայութեամբը, որպէս զի զՅորդանան ի Մեռեալ ծովէ չառնուն։ Ուստի Արիոսէ մը, ի մասնաւորի Եւնոմիանոսէ մը, իրենց գործածութեանը յարմարցուած պատարագ կրնանք անուանել ոչ առանց հիման. Բարսղի քով կրնանք բոլոր սկզբունքնին գտնել ան առեններէն՝ ճշդիւ անոր համեմատ։ Փիթրա՝ Ձեռագիրներէն մէկուն կերպարանքը կը յիշէ իբրեւ ասանկներուն գործածութենէն եղած։

Հիմայ, կը կարծենք, կրնանք Փրոփսդի հետ խօսքերնիս գոցել՝ որն որ, ինչպէս լսեցինք, աս մեր պատարագը չէ թէ մինակ Իգնատիոսի եւ Կղեմայ, հապա անկէ անդին բուն առաքելական առենները կը հանէ, բայց բուն իրեն յենարան ըրած է զՅուստինոս, որուն քով “համաձայնութիւն մինչեւ ցբառ„ կը գտնէ շատ անգամ։

Սակայն ոչ միայն հոս աղօթքներն ան օծութիւնն ու վեհութիւնը չունին՝ զորն որ ան առաքելական առենը կամ առաքելական արանց առենն ունի, — օրինակի համար՝ Պետրոսի ի Գործս աղօթքը, Կղեմայ Թուղթ Ա., Պողիկարպոսի եւ մեր վերն յառաջ բերած ձեռնադրութեան աղօթքը, — հապա ան գլխաւոր նեցուկը բաւական ջախջախ կ՚երեւայ, ինչպէս Սահմանադրութեանց պատարագն ու եպիսկոպոսի ձեռնադրութեան աղօթքը Յուստինոսի հետ համեմատողը կրնայ ստուգել։

*Մեզի եթէ մնայ, ասոնցմով հարկ չէինք տեսներ մեր պատարագը փիլիսոփոս վկային հանելու տանելու։ Գիտենք որ Արիանոսք՝ առաջնոց, իմաստնոց փառաւոր հետեւող ըլլալ կը պարծէին, ինչպէս Բարսղի քով Եւնոմիոս (Խօսք ընդ Եւնոմեայ), եւ անշուշտ սիրով կը կարդային Յուստինոսի Աստուածխօսութիւնը, մանաւանդ անոր «Անծին Աստուած»ը, իրենց դրութեան սկզբնական եզրը հոն գտնելով։ Ուստի քանի մը եզրներ ոչ պատարագէն՝ Յուստինոսիւ, այլ ընդ հակառակն շատ դիւրաւ եկած են անոր մասնաւոր ասութեանց մեր պատարագին նոր կերպարանք տուող ջերմեռանդին ձեռօք ի պէտս աղանդոյն։*

*Ուրեմն զուր եւ անպատճառ չէր, այլ Արիանոսաց յանդգնութեամբ սկսեալ՝ որ 4րդ դարուն պատարագամատոյցքն, ի մասնաւորի Կապադովկիոյ վիճակին մէջ, ի Հայոց խմբագրեցան՝ որոնք գլխաւորաբար սուրբ պատերազմ մը յանձն առած էին ասոնց չար ժրութեան դէմ։**

---

## Դ.

## ՆԱԽՆԻԿԻԱԿԱՆ ՊԱՏԱՐԱԳՔ

*(Երից առաջին քրիստոնէական դարուց։)*

*Հետազօտութիւնը դժուարին՝ բայց ձեռք բերուած արդիւնքը շատ յարգի խնդիր մը կը ներկայանայ սոյն վերնագրով, որուն վերջին տարիներս, բաւական հատորներ իսկ լեցնելու չափ, քանիներ զբաղած են։ Եթէ գոհ ըլլայինք՝ աս դարերուն պատարագին ընդհանուր գործածութիւնն ու գլխաւոր մասանց բարձր հնութիւնը, նաեւ առաքելականութիւնը, ապահովապէս նոյն իսկ ամենալուրջ գիտութեան օրինաց համաձայն երեւան ելած ցուցընելով, ստուգիւ չի պակսիր բան մը այս օրուան օրս այն գործողութիւնը լիուլի կատարուած ըսելու։ Նոյն ժամանակին եկեղեցական մատենագրութեանց մէջ աս նկատմամբ մնացած հետք եւ նշմարք առ այս բաւականէն աւելի են։ Սակայն ասկէ աւելի բանի մը կը ձգնի գիտութիւնը։ Ան ժամանակներուն պատարագին չէ թէ ստուերագրութիւնը՝ հապա նոյն իսկ բովանդակ մարմինը, յօդիւք եւ խազալեօք, կ'ուզէ առջեւը տեսնել, կ'ուզէ շօշափել։ Որո՞ւն ալ ցանկալի չէ՝ նոյն իսկ Իրենէոսի, Պողիկարպոսի, Յուստինոսի, Իգնատիոսի ձեռքն եղած կամ անոնց բերնէն հնչած պատարագի ձեւերը կարդալ կամ լսել, միայն թէ կարելի ըլլայ։*

*Որովհետեւ որոնց համար որ սահմանած է մեր գրութիւնը՝ անոնց այնչափ ծանօթ չեն աս նկատմամբ եղած շատ նոր երկասիրութիւնք, հարկ կ'ըլլայ քիչ մ'իրերը սկիզբներէն յառաջ բերել, նոյն իսկ աս նորագոյն գրութեանց սեպհական խօսքերովը. Թէպէտ, ինչպէս մեզի կ'երեւայ, հոն ոսկին հողէն բոլորովին չէ զտուած, եթէ չենք սխալիր։*

*«Դժուարաւ կրնայ աստուածաբանական գիտութեանց ճիւղ մը ցուցուիլ, — կ'ըսէ անմիջապէս իր գրքին սկիզբը Պիքէլ,[1] — որն որ մինչեւ սա մօտ ատենները ան աստիճանի քիչ թուով ստոյգ եւ ընկալեալ հետեւութիւններ յառաջ բերած ըլլայ՝ ինչպէս քրիստոնէական Պաշտամանց պատմութիւնը։*

---

* *Տես այս մասին ընդարձակագոյնս Փրոփսդի նոր գործքը.* (Liturgie etc. § 90 ff. *էջ 354 եւ այլն։* *ՀՐՏՐ.*

[1] Երբ որ մենք, ինչպէս վերը յայտնեցինք. Փարիզէն ընդօրինակութիւններ կը սպասէինք, իր «Պատարագ եւ Պասեք» մակագրուած գրութիւնը մամլոյ աւանդեր է Կուսթաւ Պիքէլ, արեւելեան բանասիրական Ուսուցիչ ի Միւնսթեր. — Messe und Pascha, v. G. Bickell. Mainz, 1872, p. 1 ff.

«Աս ուսումն սխալ, ինչպէս ծանօթ է, սա գործնական հարկաւորութենէ՝ որ պէտք էր Բողոքականաց յարձակմանց դէմ ապացուցանել թէ քրիստոնէութեան նախնական սկիզբէն է ան ուղղափառ վարդապետութիւնը՝ որն որ կը սորվեցընէ թէ սրբազան Գոհութիւնը՝ Քրիստոսի պատարագին մշտնջենաւոր ներկայացուցումը, շարունակութիւնն ու մերձեցուցումն է։ Սակայն 300 եւ աւելի եւս տարիներու միջոցին՝ գրեթէ նիւթեր ժողվելէն աւելի բան մը չեղաւ. եւ աս նիւթերուն շատութիւնը փոխանակ նպաստելու՝ մանաւանդ քննական հետազօտութեան շփոթութիւն պատճառեց։ Վասն զի բոլոր ան միջոցը ուրիշ ապահով արդիւնք մը յառաջ չեկաւ՝ որն որ իբրեւ սկզբունք կարող ըլլայ ծառայել, բայց եթէ — ամենէն աւելի որոշ կերպով Ռընոտոյէ[1] ձեւի բերուած — սա նախադասութիւնները, այս ինքն որ մի եւ նոյն պատարագներ թէ Ուղղափառաց քով եւ թէ Միաբնեայց քով (յԱսորիս եւ յԵգիպտոս) ի գործածութեան գտնուիլը՝ կը ցուցընէ որ սոյն պատարագներն այսպէս կային՝ առ անագանն 5րդ (°) դարէ հետէ, եւ թէ բոլոր Պատարագաց միաձայնութիւնը՝ որ ունին իրենց ներքին կարգադրութեան մասին, եւ շատ անգամ նաեւ ի բանս, յայտնի կ'ընէ անոնց ամենուն հասարակաց, այս ինքն Առաքելական՝ հիմն ու սկիզբը։

«Եթէ նաեւ բազմաթիւ գիտուն եւ սրամիտ քննչաց ջանքերն ալ քրիստոնէական պատարագին կամ Պաշտամանց ծագման եւ զարգացման վրայ եղած մթութիւնը ասկէ աւելի չկրցաւ փարատել, ասոր պատճառը՝ մի միայն կանխակալ կարծիք մըն էր՝ որով ան ատեն իրենք զիրենք մեզի մնացած միակ յիշատակարանէ մը կը զրկէին. յիշատակարանէ մը որով կրնար Առաքելոց պատարագին կերպարանքը տեսնուիլ. այս ինքն որ «Առաքելական Սահմանադրութիւնք» ըսուած գրքին մէջ գտնուած պատարագը չէ թէ մինակ 4րդ կամ առ առաւելն 3րդ դարու ծնունդ մը բռնեցին, հապա նոյնը -- զարմանալի կերպով — առանձնական մէկուն թարմատար յօրինուածը համարեցան, անանկ որ երբեք ատեն մը կամ տեղ մը հանդիսական գործածութիւն ունեցած չըլլայ։ Դեռ առաջին անգամ՝ Փրոպստ 1870ին հրատարակած իւր ընտիր գրութեամբն[2] ան նախապաշարումը հիմնովին վերցուց, եւ անով Պատարագաց պատմութիւնը շատ մը անապացուցական ենթադրութիւններէն ճիշդ պատմական գիտութեան կարգը վերացաւ։ Փրոպստ Առաքելական Սահմանադրութեանց պատարագն ըստ գոյացութեան Առաքելոց կարգադրած պատարագը կը համարի՝ որն որ երից առաջին դարուց բովանդակ եկեղեցւոյ մէջ, մանր տեղական տարբերութեամբք, գործածուեր է, եւ ասկէ ելեր են յետոյ՝ ի 4րդ դարուն Պաշտօնականաց վերաքննութիւնն ըլլալով՝ բաւական տարբերող ծէսեր այլեւայլ եկեղեցական գաւառաց մէջ։

«Կատարելապէս յաջողեալ է Փրոպստի սա ապացուցութիւնը թէ երից առաջին դարուց եկեղեցւոյ Հայք՝ պատարագի վերաբերեալ կոչում եւ ակնար-

[1] Renaudot, Liturgiarum orientalium collectio. Paris, 1716.

[2] Probst, Die Liturgie der drei ersten christlichen Jahrhunderte. Tübingen 1870. (Երեք առաջին քրիստոնէական դարուց պատարագը։)

— Այս այժմ 78ամեայ ծերունի գիտնականը նոր գործք մ'ալ հրատարակեց մօտերս նոյն նիւթոյ վրայ՝ սա վերնագրով «Աստուածեղէն պաշտօն Դ դարու եւ անոր կրած կերպարանափոխութիւնն» (Probst, Liturgie des vierten Jahrhunderts und deren Reform. Münster, 1893. 4° 472 pp.) — Առաքելական Պատարագի վրայ իւր յառաջ յայտնած կարծիքները հոս ալ կը հաստատէ. հմմտ. § 83–89 (էջ 319–354։)

ՀՐՏՐ.

*կութիւն ընելու ատեն գրեթէ միշտ ամենաճիշդ կերպով Առաքելական Սահմանադրութեանց պատարագին կապուած են։ Ասոր հակառակ՝ Նոր Կտակարանէն յառաջ բերած տեղերն ան աստիճանի անորոշ են եւ կրնան շատ մտքի առնուիլ, որ դժուարաւ կարող են անհաւան քննիչ մը համոզել թէ նոյն պատարագին ծագումը իրօք Առաքելոցմէ ըլլայ։„*

*Պիքքէլ այս եւ սոյն պակասը կ'ուզէ լեցընել, եւ անանկ ընել որ՝ (ինչպէս ինք կ'ըսէ՛) գոնէ ճշմարտասէր քննիչներու համար ալ ազատ խնդիր չըլլայ ան Նախնական անուանեալ Առաքելական Սահմանադրութեանց մէջ գտնուած պատարագին Առաքելոցմէ անմիջական կերպով ծագում ունենալը, ապացուցանելով թէ աս սկզբնական պատարագը՝ որն որ "գրեթէ բոլորովին վաւերական ձեւովը„ յիշեալ Սահմանադրութեանց մէջ պահուեր է, "թէ՛ ըստ կարգի մասանց եւ թէ՛ նաեւ ըստ բանից„ Քրիստոսի ատենուան Հրէական Պասեքին ընթրեաց արարողութեան հետ կապակցութիւն ունի, եւ աս պատարագին "Կանոն„ ըսուած մասը ճշդիւ կը համեմատի ան Օրհնութեան (Հալէլին)՝ որն որ չորրորդ եւ վերջին բաժակին վրայ կ'ըսուէր նոյն ընթրեաց ատեն. իրօք աս չորրորդ բաժակն ըլլալով՝ ան զոր Փրկիչը սրբագործեց, հարկաւ կը հետեւի (կ'ըսէ Պիքքէլ) թէ աս Նախնական պատարագը կերպաւորուած է ճշդիւ Քրիստոսի Պասեքին ընթրիքէն ետքը հաստատուած Գոհութեանը վրայ. ուստի ան Նախնական պատարագն աս Քրիստոսի գործքէն քիչ ետքը՝ Առաքելոցմէ ի գիր աւանդուած է։*

*Այսպէս Պիքքէլ. որն որ չ'ուզեր աս սկզբնաբար Նախնական պատարագին (զորն որ սովորութիւն եղած է համառօտութեան համար "Կղեմեան„ անուանել,) հնութեան վրայ ընդարձակ խօսիլ, վասն զի նոյնը Փրոպստ արդէն ըրած է։ Ուստի աս նկատմամբ ճշդագոյն տեղեկութիւն առնելու համար լաւագոյն կ'ըլլայ զնոյն իսկ Փրոպստ լսել՝ որն որ սոյն պատարագին հետքերը բովանդակ երից առաջին դարուց եկեղեցական մատենագրութեան մէջ փնտռելէն ետքը՝ կը դառնայ ասոր հնութեանը վրայ իր խօսքերը կը ժողվէ, քանի մը իրեն նախընթաց մատենագրաց ըսածները ջրելու ջանալով։*[1]

*"Առաքելական Սահմանադրութեանց պատարագին ծագման ժամանակն որոշելու համար, կ'ըսէ, բուռնհար կ'ըլլանք նախ Տրային խօսքերուն։*

*"Տրայ* (Drey) *աս պատարագը մեր ճանչցածներուն ամէնէն երիցագոյնը կը համարի։ Վասն զի "Երախայից պատարագը„ դեռ բոլորովին հին խիստ բարեկարգութեան* (discipline) *համեմատ է, արտաքին ժողովուրդը՝ երախայից, այսահարաց, լուսաւորելոց եւ ապաշխարողաց բաժնուած։ Բարսղի եւ Ոսկեբերանի պատարագներուն մէջ, ինչպէս որ հիմայ կան, աս ամէնքն արդէն անհետ եղած են։ Նոյն իսկ Կիւրղի Երուսաղէմացւոյ պատարագը՝*[2] *որուն վրայ աս հայրապետը մինակ գումարաբար* (sommairement) *կը խօսի, եւ որն որ ըստ այլոց մասանց մերինին*[3] *հետ ան աստիճան ճիշդ կը համաձայնի՝ որ կրնան երկուքը մի եւ նոյն բռնուիլ, պատարագի աս առաջին մասը ("Երախայից„ ըսուած պատարագը) չունի, անշուշտ աս պատճառով որ հարկ չկար զանիկայ մկրտելոց մեկնել՝ որոնք դեռ չմկրտուած՝ գիտէին։ Սակայն Կիւրղի պատարագն ունի արդէն զհայր*

---

[1] Յիշեալ մատեան. § 85։

[2] Catech. mystagog. V.

[3] Կղեմեանին, Առաք. Սհմնդր. մէջ գըտնուածին։

մեր յառաջ քան զՀաղորդութիւն՝ զորն որ մեր* պատարագը դեռ չունի, եւ զոր ուրիշ բոլոր կրսերագոյն պատարագները պահած են։

“Դարձեալ. մեր պատարագին հնութիւնն աղօթքներուն երկայնութենէն ալ կը ճանչցուի. որովհետեւ անկէ ետքի ժամանակներու մէջ քրիստոնէից եռանդը նուազելով աղօթքներն ալ համառօտեցաւ, եւ աս էր գլխաւոր պատճառն ալ որ Բարսեղ եւ Ոսկեբերան հնագոյն պատարագը կերպարանափոխ ըրին։

“Նմանապէս. մեր պատարագն իր հնութիւնը կը ցուցընէ՝ տարբերելով յիշեալ երկու պատարագներէն, եւ աւելի եւս “Յակոբայ„ ըսուած պատարագէն, ըստ որում չէ թէ միայն չունի ան քահանայի աղօթքները, որոնք ան ատեն աւելցան՝ երբ որ աստուածային պաշտաման կերպը բոլորովին փոփոխութիւն առաւ, հապա վախճանելոց Յիշատակաց մէջ դեռ մասնաւոր Սրբոց անուանք չկան, եւ ոչ Աստուածամօր անունը. իսկ կենդանեաց համար եղած խնդրուածոց մէջ՝ հին պատարագին մէջ գտնուած միանձանց տեղ մերինին մէջ ճգնաւորք (ἀσκηταὶ) կը յիշուին։

“Սակայն (կը յաւելու Փրոպստ,) աս Սահմանադրութեանց պատարագին (մեր ճանչցածներուն մէջ) հնագոյնն ըլլալը երեւան հանելով՝ շատ բան մը շահուած չ'ըլլար. որովհետեւ եթէ մէկն ուրիշ բան չընէ՝ բայց եթէ նոյնը միւս ցած պատարագաց հետ, ինչպէս որ հիմայ կը գտնուին, համեմատել, ինք իրմէ յայտնի կ'ըլլայ հնութիւնը։ Ուստի Տրայ կը ջանայ անոր ժամանակը՝ անոր պարունակածին մասնաւոր յատկութենէն յառաջ բերել։

“Կ'ըսէ. Սուրբ Գրոց ընթերցմունք Տերտուղիանոսի եւ Յուստինոսի ըսածներուն կը համաձայնին. “Երախայից„ պատարագը ան բարեկարգական կարգադրութեանց համեմատ է՝ որոնք 2րդ դարուն վերջէն՝ ընդհանուր կային։ Նոյնն ըսելու է նաեւ հաւատացելոց համար եղած աղօթից եւ խաղաղութեան ողջունին նկատմամբ։ Նաեւ զոհագործութեան (Opferhandlung) մասը մեր պատարագին մէջ Յուստինոսի եւ Իրենէոսի քով[1] նշանակուածէն տարբեր չէ. նոյն իսկ Սրբագործութեան ձեւը Իրենէոսի քով ըստ գոյացութեան նոյն ձեւն ունի։ Խնդրուածոց մէջ գտնուած յիշատակութիւնք՝ հաւատոյ համար աքսորելոց, ինչպէս նաեւ ատելեաց եւ հալածչաց համար եղած խնդրուածք 3րդ դարուն կը վերաբերին։ Առ հասարակ բոլոր պատարագին մէջ բան մը չի կրնար ցուցուիլ՝ որ զմեզ ստիպէ աս պատարագն 3րդ դարէն անդին ձգելու՝ բայց եթէ երկու եզրներ։

“Առաջինն է ճգնաւորք, որոնց համար (Գլ. 2.) յանուանէ կ'աղօթուի եւ ատոնց՝ (Գլ. 13.) հաղորդողաց կարգին մէջ մասնաւոր տեղ մը կը նշանակուի, կղերականներէն անմիջապէս ետքը։ Ուրեմն մեր պատարագին յօրինուած ատեն ասոնք մասնաւոր վիճակ մը կը կազմէին եկեղեցւոյ մէջ։ Արդ ճգնաւորք 2րդ դարուն վերջերն երեւան ելան։ Ուստի եթէ հաշուելու ըլլանք թէ ի ծագմանէ միանձանց՝ որոնք ճգնաւորաց տեղն անցան, որչափ ժամանակ անցաւ մինչեւ որ եկեղեցւոյ մէջ հրապարակաւ ծանուցեալ վիճակ մը ձեւացուցին, շատ սխալած չենք ըլլար եթէ ըսենք որ ճգնաւորք 4րդ դարուն սկզբնաւորութենէն յառաջ մասնաւոր կարգ եւ վիճակ մը կազմելու հասած պիտ'որ չըլլան։

---

* Այստեղ “մեր„ ըսելով հեղինակը չի հասկընար Հայոց պատարագը. խօսողն է Տրայ, եւ խօսքն “Առաքելական Սահմանադրութեանց„ պատարագին վրայ է։ ՀՐՏՐ.

[1] L. 4. 17. 38 — L. 5. 2, et fragm. ad Mass.

«Նոյնպէս կէս-սարկաւագաց աստիճանին եւ անուան նկատմամբ։ Առաքել. Սհմնդր. առաջին վեց գրքերը դեռ կիսասարկաւագ չեն գիտեր, այս ինքն ասոնց տեղ կան հոն (Գիրք Բ. Գլ. 15, 28, 57,) πύλωροι, (դռնապանք, դրդլք.) եւ (Գիրք 6. 17,) ὑπηρέται. (Հիւպերէտք, սպասաւորք։) Իսկ Ը. Գրքին մէջ ոչ πύλωροι եւ ոչ ὑπηρέται կը պատահի, հապա անոնց տեղ ὑποδιάκονοι. Աս փոփոխութիւնն ալ չի կրնար 4րդ դարուն սկզբնաւորութենէ առաջ եղած ըլլալ, ուստի նոյն ատենն ալ պիտ'որ ըլլայ մեր պատարագին յօրինումը հիմակուան ունեցած կերպարանաց մէջ։

«Ըստ այսմ կը զանազանէ Տրայ պատարագի ծագումը եւ հրատարակութիւնը (կ'ըսէ Փրոփոզ)։ Վերջինը 4րդ դարուն սկիզբը կը դնէ, եւ ասիկայ մենք իրեն կը թողունք. իսկ առաջինը — ինչպէս կ'երեւայ, վասն զի շատ անորոշ եւ վերապահութեամբ կը խօսի, — 3րդ դարուն կը հանէ։

«Դալով ծգնաւորաց համար ունեցած վարանացը, ահա աս անունը (Գլ. 12.) չկայ. իսկ ան կտորը, (Գլ. 13.) որուն մէջ նոյն անունը կը գտնուի, աւելի եղած յաւելուած մըն է, ինչպէս նախընթաց հատածին մէջ ցուցուցինք։[1] Նոյնպէս են ան տեղերն՝ որոնց մէջ ὑποδιάκονοι կը գտնուին։

«Իսկ նկատմամբ ծգնաւորաց կ'աւելցընենք որ դարով մը կը սխալի Տրայ։ Ասոնք 1րդ դարուն վերջը կային, եւ 3րդին սկիզբը մասնաւոր կարգ կամ վիճակ մը կը ձեւացընէին։ Առաջինը Յուստինոսէն յայտնի է, երկրորդը Հիպպողիտոսէն։

«Յուստինոս կը խոստանայ յարանց եւ ի կանանց անանկներ ցուցընելու՝ որոնք 60 կամ 70 տարեկան են, եւ ի մանկութենէ Քրիստոսի աշակերտելով կուսութեամբ ապրած են։[2] Ըսել է ասոնք Յուստինոսի գրած ատեն 70 տարեկան էին, իրենց ծնունդն ալ 80 թուականին կ'իյնար։ Ուրեմն առաջին դարուն մէջ կային ժուժկալք (continentes) եւ ծգնաւորք (ascetae)։

«Ըստ Հիպպողիտեայ՝ իրեն ժամանակակիցներն Առակաց (Թ. 1.) խօսքը եկեղեցւոյ մէջ գտնուած եօթն վիճակաց վրայ կը մեկնէին, այս ինքն մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց, եպիսկոպոսաց, ծգնաւորաց, սրբոց եւ արդարոց։[3] Աս եօթն վիճակը վախճանելոց Յիշատակաց մէջ Պատարագին Գլ. 12ը կ'ենթադրուին եւ կ'ընդգրկուին, անոր համար ալ Յեղափոխները Հիպպողիտոսէն յառաջ գրուած չեն։[4] Ըսել է Հիպպողիտայ օրերը չէ թէ միայն ծգնաւորաց անունը, հապա նաեւ քննիչը ձեւացած կար, եթէ երկուքն ալ ան աստիճան ծանօթ եւ ընտանի եղած էր որ իրեն ատենուան սուրբ Գրոց մեկնիչք Առակաց խօսքն յիշեալ կերպով կը մեկնեն, եւ եթէ վերջապէս Հիպպողիտոս 3րդ դարուն սկիզբներն ապրած է, ան ատեն ան գրութիւնը — այսինքն Առաք. Սհմնդր. պատարագը՝ որուն մէջ ծգնաւոր անունը բնաւ չկայ,[5] հապա միայն Աւետարանէն առնուած εὐνοῦχοι ասութիւնը, — պէտք է Հիպպողիտէն առաջ, ուստի եւ գոնէ ի վախճան 2րդ դարուն դնել։[6]

«Ժամանակի որոշման համար ուրիշ կուսանները կու տան քրիստոնէական յատկութիւնք։

---

1 Սակայն առանց հիման։

2 Յուստ. Պաշտպ. Գլ. 15։

3 Galland. II. p. 488.

4 «Էն» պիտ'որ ըսէ Փրոփոզ՝ «կին» ըսելու տեղ։

5 Որն որ իրաւ չէ։

6 Գլ. 12, ὑπὲρ τῶν ἐν παρθενίᾳ καὶ ἁγνείᾳ ὁσίως πορευόμενοι. Գլ. 10։

«Եթէ ան համարձակութեան նայինք (կ՚ըսէ Տրայ), որով այլեւայլ ասութիւնք կը գործածուին աս պատարագին մէջ Երրորդութեան անձանց յարաբերութիւնները նշանակելու եւ թէ ինչ ազատութեամբ ասութիւնք փոփոխակի կը գործածուին, կը հասկնանք որ ան ատեն դեռ ձեւ մը կանոնուած չէ եղեր։

«Շատ մը ասութիւնք ալ յայտնի կը կրեն նշաններ սուտանուն Դիոնիսեան դէմ ձեւացած ըլլալնուն, ինչպէս աս ստորոգելիք՝ Անծին, ὁ πρῶτος τῇ φύσει, νόμος τοῦ εἶναι, ἀρείττων παντὸς ἀριθμοῦ — ինչպէս նաեւ աս նախադասութիւնը թէ Որդին՝ Հօր կամքէն, զօրութենէն ու բարութենէն առանց միջնորդի (ἀμεσίτευτως) ծնած է, որն որ յայտնի կերպով Վաղենտինեայ եւ Պտղոմեայ մոլար վարդապետութեան դէմ կու գայ։[1]

«Ասկէ կ՚եզրակացընէ Տրայ (կ՚ըսէ Փրոպստ,) որ պատարագին յօրինումը Արիոսութեան ծագմանէն յառաջ է։ Բայց ասիկայ շատ քիչ է։ Աս պատարագին Երրորդութեան վրայ ունեցած վարդապետութիւնն ան ատենուան Յուստինոսի ունեցածին հետ զարմանալի նմանութիւն ունի որ աս մինակ բաւական պատճառ էր՝ սոյն պատարագը Յուստինոսի ատենը հանելու։

«Ամենայն իրաց Հայրն, ըստ Յուստինոսի, անուն չունի, վասն զի անծին եւ անսահման է։ Աստուած ըստ ինքեան — այս ինքն ըստ Յուստինեայ — ամենայնի Հայրը բոլորովին գեր ի վերոյ է միջոցի եւ ժամանակի, հոս կամ հոն չէ եւ ոչ բովանդակ աշխարհք, իր տեղն անշարժ է, անանկ որ ամէն բան կը ճանչնայ, ոչ ոք եւ ոչ ինչ իրեն անյայտ կը՝ մնայ։ Ասանկ կը նկարագրէ Քուն[2] Յուստինոսի աստուածաբանութիւնը։

«Ասոր հակառակ իր Որդին՝ որն որ մինակ յատուկ կերպով Որդի կ՚ըսուի, Բանն նախ քան զամենայն արարածս՝ որն որ Հօրը հետ է եւ անկէ ծնած է, երբ որ անոր ձեռօք ամէն բան հիմնեց եւ կարգաւորեց, ասիկայ ունի (բուն) անուն՝ Քրիստոս, վասն զի աստուածային փառաց ճաճանչ է, եւ Աստուած անոր ձեռօք ամենայն ինչ զարդարեց։

«Աւելի կը բացատրէ ինք զինք Յուստինոս Հօր եւ Որդւոյ յարաբերութեան մասին հետեւեալ խօսքերով — իբրեւ բոլոր արարածներէն սկզբնաւորութիւն՝ Աստուած իրմէ բանական զօրութիւն մը՝ որն որ մերթ Փառք Տեառն, մերթ Որդի, Իմաստութիւն, Հրեշտակ, Աստուած, Տէր եւ Բան կ՚անուանուի։ — Անոր խօսեցաւ. Արասցուք մարդ. — Անոր ձեռօք կատարեց բոլոր արարչութեան գործը։[3] —

«Աւելի եւս մտադրութեան արժանի է ըսելը՝ թէ Որդի Հօր կամօք ծնաւ (Θελήσει τοῦ Πατρός, κατὰ βουλὴν, δυνάμει καὶ βουλῇ αὐτοῦ)։[4] Ուստի աշխարհքիս արարչութեան պատճառաւ Աստուծմէ ելած Աստուծոյ Բանը կ՚երեւցուի իբրեւ Հին Կտակարանաց աստուածայայտնութիւններուն անձը (subject)։[5]

«Վերջապէս աս խօսքն ալ կ՚աւելցընէ Յուստինոս թէ Աբրահամու երեւցողն Արարչէն ուրիշ Աստուած մըն էր, այսինքն ըստ թուոյ բայց ոչ ըստ կամաց, վասն զի երբեք ուրիշ բան մը չըրաւ՝ բայց եթէ ինչ որ աշխարհքիս Արարիչը՝ որմէ վեր ուրիշ Աստուած չկայ՝ ուզեց որ ընէ եւ խօսի։[6]

---

[1] Տրայ, յիշ. տեղը, էջ 124.

[2] Kuhn, Dogmatik, էջ 138։

[3] Ասոնք ուրեմն Յուստինոսէն յառաջ եղած պատարագին մէջ կը գտնուին ու առաքելական են եղեր։ Զարմա՜նք։

[4] Քուն, (Kuhn,) անդ. էջ 131։

[5] Նոյն, էջ 132։

[6] Նոյն, էջ 139.

“*Ըստ ամենայնի նոյն տեսութեան վրայ շինուած է Պատարագն ալ։*

“*Ա՛ս ալ Աստուծոյ անուն մը չի տար, եւ նոյն պատճառով չի տար՝ որով Յուստինոս կը զլանայ, վասն զի աստուածութիւնն իր ծայրագոյնութեամբն անեզր անսահմանութեան կ'երթայ եւ անոր համար անըմբռնելի է. որովհետեւ սա խօսքերը՝* **անսկիզբն, անթագաւոր** (ἄναρχος, ἀβασίλευτος) *ուրիշ բան չեն՝ բայց եթէ անուանց բացասութիւնք։*

“*Դարձեալ.* 15րդ *Գլխոյն մէջ կ'ըսուի թէ Աստուած անհամեմատական է, ամէն տեղ էական եւ յամենայնի ներկայ, եւ ոչ յիմիք իբրեւ ներգոյող իր կը գտնուի, տեղով մը չի պարագրուիր, ի բնէ անփոփոխ եւ աներեւոյթ, անմատոյց լուսոյ մէջ բնակած եւ այլն։*

“*Բայց աղէկ կ'ըլլայ նոյն իսկ տեղերը տեսնել համեմատել։ Ամէն բան, — կը շարունակէ ըսել Պատարագը, — Միածին Որդւոյն ձեռօք եղաւ՝ որն որ ինք յառաջ քան զյաւիտեանս ծնաւ* (βουλήσει, καὶ δυνάμει καὶ ἀγαθότητι,) *ա՛ն, որն որ է Միածին Որդի, Բան Աստուծոյ, Իմաստութիւն կենդանի, Անդրանիկ ամենայն արարածոց, Հրեշտակ մեծի կամաց քոց, Քահանայապետ քո, Թագաւոր եւ Տէր աշխարհի. — Քու Իմաստութեանդ ըսիր. Արասցուք մարդ, — Քու Օծեալդ Աբրահամու երեւցաւ — Քեզի, իր Աստուծոյն եւ Հօր յամենայնի սպասաւորեց թէ՛ յարարչութեան եւ թէ՛ ի նախախնամութեան։*

“*Ինչպէս Յուստինոս՝ նոյնպէս Պատարագն սանկ կը բացատրէ եկեղեցական վարդապետութիւնն սոյն հրամանական* (dogmatique) *մասանց նկատմամբ։ Աս տեսակ բանից ձեւերը՝ Հակառակ-երրորդականներու վիճողութիւններէն ետքը, ա՛լ յարմար չըլլալով, արդեօք անո՞նք պատճառ եղած են որ Ս. Բարսեղ Պատարագը կերպարանափոխ ըրաւ եւ ճշդիւ գոհութեան աղօթքը՝ որուն մէջ սոյն ասութիւնք կը գտնուին, կ'ըսէ Փրոփստ։*

“*Բայց ասկէ կը հասկըցուի որ Պատարագը կրնայ այն Յուստինոսէն առաջ, այլ ոչ անկէ ետքն ըլլալ. վասն զի Յուստինոսէն ետքը շատ վիճողութիւնք սկսան սրբոյ Երրորդութեան անձանց յարաբերութեան վրայ՝ զորոնք դեռ բոլորովին կ'անգիտանայ Պատարագը։*

“*Անկէ ետքը Պատարագին մէջ գտնուած* **փառաբանութեան** (doxologia) *կ'անցնի Տրայ, եւ սա խորհրդածութիւնը կ'ընէ թէ ինչպէս սա ձեւը կայ՝ “Փառք եւ երկրպագութիւն քեզ (Հօր) ի* **ձեռն** *Որդւոյ ի Հոգին սուրբ,„ կայ նաեւ մէկալ ձեւը՝ “Երկրպագութիւն քեզ Հօր* **եւ** *Որդւոյ* **եւ** *Հոգւոյն սրբոյ,„ որով կը տեսնուի, կ'ըսէ, թէ նաեւ յայսմ անկասկած ազատութիւն մը կը բանեցուի, մինչեւ որ հերետիկոսք մինակ մէկ ձեւը գործածելով՝ զանիկայ կասկածելի ըրին, եւ ասով ստիպեցին որ եկեղեցին ալ իր կողմանէ մէկալ ձեւը որոշէ իբրեւ ուղղափառական։*[1]

“*Մինակ մէկ ձեւոյ որոշումը արիանոսութենէն հետեւեցաւ. անոր համար ալ Պատարագին շարագրութիւնը Նիկիական սինհոդոսէն յառաջ կը դնէ Տրայ։ Տանիէլ* 12րդ *Գլխոյն սկիզբը գտնուած Փառաբանութեան համար կ'ըսէ՝ թէ վասն զի Առաքելական (այս ինքն Բ. Կորնթ. ԺԳ.* 13*ին) օրհնութեան ձեւէն կը տարբերի, Պօղոսի Սամոսատցւոյ կամ Սաբելի դէմ ուղղուած պիտ'որ ըլլայ։*[2] *Կ'աւելցընէ Տանիէլ թէ Պատարագին սկիզբը՝ եպիսկոպոսն Առաքելոյն*

---

[1] Տրայ. անդ. էջ 125։

[2] Տանիէլ. յիշ. տեղը, Դ. էջ 61։

*խօսքն անպայման կը գործածէ։ Մենք ալ ճիշդ այս եւ սոյն պատճառին համար կը կարծենք որ Գլ. 12 ձեւին մէջ եղած տեղափոխութիւնը վերջնական պատճառէ մը յառաջ եկած չէ։ Եթէ մասնաւոր նպատակաւ մ'եղած ըլլար փոփոխութիւնը, այս ինքն հերետիկոսութեան դէմ ուղղուած ըլլար, պէտք էր նաեւ առաջին տեղն ալ փոխել։ Արդ որովհետեւ երկրորդ տեղն եղած բառից տեղափոխութիւնը թէ՛ մկրտութեան ձեւին եւ թէ՛ հանգանակին մէջ սովորական ու գործածական եղած է, անոր համար հոս մենք դիտմամբ եղած բան մը չենք տեսներ. ուստի կը կարծենք որ Պատարագին մէջ գտնուած փառաբանութիւնք չէ թէ 325էն ետքը՝ հապա կրնան 2րդ դարուն մէջ ի գործածութեան եղած ըլլալ։*

*"Թէ Աստուած — կը շարունակէ Տրայ — Որդւոյ ձեռօք աշխարհս ստեղծեց, ստէպ կը կրկնուի, եւ պարզ բան մըն է. սակայն սա մտադրութեան արժանի է որ նաեւ* աշխարհին կառավարութիւնը *Որդւոյն կ'ընծայուի, եւ թէ ինչ կերպով կ'ընծայուի։ Ինչպէս գրեթէ ամէն հին քրիստոնէական դրուածոց մէջ, հոս ալ սուրբ Գրոց սովորական ըմբռնումը սփռած է, մարդկան առ Աստուած բոլոր յարաբերութիւններն ամէն ժամանակաց մէջ Որդւոյ ձեռօք միջնորդեալ մտածելով։*

*"Սոյն իսկ ստեղծման վրայ ունեցուած գաղափարին ալ* (Գլ. 12) *միտ դնելու է. վասն զի կ'երթայ կը շօշափէ բխման* (émanation) *գաղափարը. եւ Պատարագին ժամանակը ցուցնելու ուրիշ ապացոյց մ'ալ աս է։*[1] *Առ այս մենք միայն սա ունինք աւելցնելու* (*կ'ըսէ Փրոփստ*) *որ սոյն նշաններն աւելի* 2րդ *դարուն քան թէ* 3րդ *դարու մէջ յօրինուած կը ցուցնեն աս Պատարագը։*[2]

*"Ուրիշ մասնաւոր բան մ'ալ ունի Պատարագը՝ որն որ ըստ ասութեան Տրայի, Բանակրօնութիւն* (rationalisme) *մըն է։ Մարդուս իմացականութեան մէջ ի բնէ ստեղծման՝ կայ աստուածածանօթութեան սերմը,* (Գլ. 12.) *անոր համար ալ* (Գլ. 9 եւ 12) *կ'աղօթուի իմացականութեան պարգեւին համար՝ նաեւ ճաշակմանէ ետքը։*[3] *Բոլորովին համաձայն է ասոր Յուստինոս՝ որն որ Քրիստոնէութիւնն իբրեւ ամբողջ ճշմարտութիւն կը ճանչնայ, իսկ Յունաց փիլիսոփայական դրութեանց եւ բանաստեղծներուն ասութեանց մէջ միայն մասնական ճշմարտութիւն։*[4] *Ի ձեռն սերմնական բանին*[5] *ինչ ինչ խօսած են ոչ օտար ի քրիստոնէական ճշմարտութենէ, սակայն եւ ոչ ալ հաւասար։ Իրենց բնածին սերմնական բանիւն ճշմարտութիւններ ճանչցան ըստ աղօտ՝ զորոնք մենք քրիստոնեայքս պայծառ կը տեսնենք. վասն զի ուրիշ է բանին սերմը, ուրիշ է նոյն իսկ բանին մասնակցութիւնը։*[6] *Յուստինոսի եւ Պատարագին մէջ եղած նմանութիւնը դարձեալ գրեթէ բառերու իսկ կու գայ։*[7] *Պատարագին Բանակրօնութիւնը յայտնապէս* 2րդ *դարը կը ցուցնէ քան թէ* 3րդ, *կ'ըսէ Փրոփստ, եւ կ'աւելցնէ՝*

*"Ցայս վայր յառաջ բերուածներուն համեմատ՝ սանկ կ'ուղղագրենք Տրայի ասութիւնը. այս ինքն թէ*

---

[1] Տրայ, անդ. էջ 126։

[2] "Հրեշտակաց ստեղծման կերպին վրայ, ինչպէս որ Պատարագը կը սորվեցնէ (Գլ. 12), համեմատելի է Իրենէոսի Գիրք Բ. գլ. 30. Թ. 6." կ'ըսէ Փրոփստ։

[3] Տրայ, էջ 127։

[4] Յուստ. Պատասխ. Բ. գլ. 8։

[5] *Λόγος σπερματικός.*

[6] Յուստ. անդ. գլ. 13։

[7] Առաք. Սահմանադրութիւնք. Գիրք Ը. գլ. 12. Պատասխ. Բ. գլ. 8։

"Աս Պատարագին մէջ չէ թէ միայն բան մը չի կրնար ցուցուիլ՝ որ ստիպէ զմեզ զանիկայ 2րդ դարէն առջին ձգելու, հապա շատ բան կայ՝ որ կը ստիպէ սոյն 2րդ դարուն սկիզբը զանիկայ հանելու, գլխաւորաբար նոյն Յուստինոսի ակնարկութիւնները:

Անկէ ետքը Փրոփստ սոյն Պատարագին Հայրենեաց վրայ (§ 86) Տրայի դէմ վիճելով կ'ըսէ.

"Խնդիր ըլլալով թէ ո՛ր եկեղեցւոյ մէջ աս Պատարագը գործածուած է, այլեւայլ ենթադրութիւններ ծնան պատասխանելու համար: Ըստ որում անիկայ Առաքելական պատարագ է, հարկ է որ ըստ գոյացութեան ամէն եկեղեցեաց մէջ ի գործածութեան եղած ըլլայ, եւ կրնայ դիւրաւ ցուցուիլ որ հին պատարագներն ամէնքն ալ գոյացապէս միաձայն են: Սակայն ասոր վրայ է խնդիրը՝ թէ աս բանից ձեւ ունեցող պատարագն ո՞ր եկեղեցւոյ մէջ գործածութիւն ունեցած է: Կոար եւ Ռընոտոյ կ'ըսեն թէ անիկայ արեւելեան եկեղեցեաց եւ ո՛չ մէկուն մէջ ի գործածութեան եղած է. Քրապպէ զանիկայ իբրեւ գաղափար շինուած պատարագ մը կը համարի: Աս կարծիքներուն դէմ Տրայի զրուցածները յառաջ բերենք, կ'ըսէ Փրոփստ:

"Աս մեր Պատարագն այսչափ անտարակուսելի հնութիւն մ'ունենալով, մեծ սխալմունք է որ Կոար եւ անկէ ետքը Ռընոտոյ կ'ըսեն թէ Առաքելական Սահմանադրութեանց պատարագն արեւելեան եկեղեցեաց եւ ոչ մէկուն մէջ երբեք գործածուած է: Ուստի՞ գիտեն ասոնք զասիկայ, ի՞նչ մտօք կրնան ըսել: Թէ Ս. Բարսղի ատեններէն ետքը, երբ որ ծանօթ եպիսկոպոսաց եւ եկեղեցեաց անուամբ պատարագներ կը սկսին, աս Պատարագը չգործածուեցաւ, կրնայ բաւական հաւանականութեամբ ըսուիլ. որովհետեւ կրնան վկայութիւնք գտնուիլ՝ որ կ'ըսեն թէ Բարսեղեան պատարագը շուտով մէկալ պատարագները խափանեց, եւ ի 5րդ դարու բոլոր Արեւելքին մէջ ընդունուած էր, ուր որ Ոսկեբերանինը՝ որն որ յետնագոյն է, նախ միայն Կոստանդնուպոլսի եկեղեցւոյն յատուկ էր, մինչեւ որ նոյն եկեղեցւոյն համբաւն ու իշխանութիւնը երթալով զօրացաւ, եւ սոյն Ոսկեբերանինը բովանդակ Յունաց մէջ՝ եւ Յունաց ձեւով նաեւ քրիստոնէութեան եկող Սլաւներուն մէջ՝ տարածեցաւ, բայց Բարսղինը բոլորովին անհետ չըլլալով: Սակայն ի՞նչ կը հետեւի ասկէ նախընթաց դարուց համար: Աս դարերն ալ անշուշտ իրենց պատարագներն ունէին եւ ըստ զանազանութեան իւրաքանչիւր ձեւոց՝ ետքի ատեններէն շատ աւելի բազմաթիւ պատարագներ. վասն զի մասնաւոր եկեղեցիք ան ատենները իրարմէ աւելի անկախութիւն ունենալով՝ իւրաքանչիւր իրեն աստուածային պաշտօնն ըստ կամի կարգաւորեց: Իրաւ է, մեք ան հին պատարագները չենք գիտեր, վասն զի անոնցմէ եւ ոչ մէկն ընդհանուր, հապա ամէն մէկն իրեն եկեղեցւոյն մէջ ծանօթ էր: Բայց եթէ ըստ պատահման պատարագ մը մեզի պահուած է՝ որն որ բոլոր իրեն որպիսութեամբը մէկալ բոլոր պատարագներէն բարձրագոյն հնութիւն մը կը ցուցընէ, ինչո՞ւ պիտ'որ ըսենք թէ Արեւելքի եկեղեցեաց եւ ոչ մէկուն մէջ երբեք գործածուած ըլլայ՝ միայն սա պատճառաւ որ չենք կրնար լիուլի ստուգութեամբ ըսել թէ ո՛ր եկեղեցւոյ մէջ գործածուած է: Ինչո՞ւ Քրապպէի հետ պիտ'որ ըսենք թէ Սահմանադրութեանց գիրքը գաղափարական (մտացածին) պատարագ մը, վարդապետութեան գաղափարական կանոն մը՝ առջեւնիս կը դնէ. կարծես թէ նաեւ առաջին դարուց մէջ սովորութիւն եղած ըլլար ինքնա-

գլուխ պատարագներ չինել, մեր պաշտամանց նորոգիչներուն պէս. իբրեւ թէ ասանկ բան մ'ան առեն մէկուն միտքը կարող ըլլար իյնալ, մինչդեռ առ հասարակ ընդունուած էր որ մինակ եպիսկոպոսաց իրաւունքն է պաշտօնական կրօնութիւնները կարգադրելը։

"Աս բացատրութեան մէջ (կ'ըսէ Փրոպստ,) ամենէն աւելի ծանրակշիռ սա խօսքերը կը համարինք. Բաբելոնեան պատարագը տեղ տեղէն բոլոր մեկալ պատարագներուն տեղն առաւ։ Անոր համար 4[rd] դարուն վերջէն սկսելով պէտք չենք լուր մը սպասել՝ որն որ մեր պատարագին որ ողջոյն եկեղեցւոյ մէջ գործածուած ըլլալուն վկայէ։ Աս պատարագն ան ժամանակէն յառաջ ի գործածութեան էր. երից առաջին դարուց մէջ կը գործածուէր անիկայ։ Ուստի եթէ Ռընոտոյ կ'ըսէ թէ Ցոյնք թէպէտ եկեղեցական իրաց մէջ բանաքննութիւն (critique) բանեցուցած չեն, սակայն եւ այնպէս աս պատարագն երբեք հին պատարագաց կարգին մէջ յառաջ բերած չեն, անտարակոյս անոր համար որ նոյնն Արեւելից եկեղեցիներուն եւ ոչ մէկուն մէջ ի գործածութեան գտան. ընդ հակառակն Յակոբայն, Բարսղին եւ Ոսկեբերանինը յանուանէ կը յիշատակեն.[1] ասով ահա տրուած կ'ըլլայ ան լռութեան մեկնութիւնը։ Կրնայ մէկը պատասխանել թէ նաեւ իրենց առաջին դարուց մատենագիրք աս պատարագին վրայ չեն խօսիր։ Այո, չեն ըսեր թէ անիկայ որոշ եկեղեցւոյ մը մէջ գործածուած է. բայց ամէնքը զանիկայ կը ճանչնան իբրեւ ամէն տեղ ի գործածութեան եղած պատարագ մը։ Առաջիկայ գրութիւնը (Փրոպստի գիրքը) կ'ապացուցանէ որ աս մատենագրաց ակնարկութիւնները բոլորն ալ աս պատարագին կը հային։ Թէպէտ շատ անգամ ըսուած է թէ առաջին երից դարուց մէջ աստուածային պաշտօնն այլեւայլ եկեղեցեաց մէջ շատ այլեւայլ էր, եւ թէ իւրաքանչիւր եկեղեցի իրեն յատուկ պատարագն ունեցած է. բայց աս ասութիւնը դեռ ոչ ոք ապացուցութեամբ հաստատած է։ Չի կրնար ապացուցութիւն ընդունիլ, վասն զի առաջին դարուց մատենագիրք այնպէս միաձայն են պատարագը նկարագրելու մասին որ ան ատեն նշանաւոր տարբերութիւն մը եղած չի կրնար մտածուիլ։ Աս տարբերութիւնը 4[rd] դարուն վերջն երեւան ելաւ։ Անոր համար մեր Պատարագը առ հասարակ կաթողիկէ եկեղեցւոյ պատարագն է։ Իբրեւ այսպիսի կը նկարագրէ զանիկայ Յուստինոս ալ։ Կը յիշեցընենք աս նկատմամբ որ Որոգինէս՝ զσυναπτὴν (կցորդը) Սրբագործութենէն ետքը կը դնէ. սակայն Մարկոսի պատարագը Սրբագործութենէն յառաջ ունի։ Ուրեմն վերջինը ետքէն փոփոխութիւն մը կրած պիտ'որ ըլլայ։ Նկատմամբ Գոհութեան աղօթքին կը ցուցընէ Յուստինոս (ինչպէս նաեւ Կղեմէս Հռոմայ, եւ Թուղթն առ Դիոգնետոս) որ Ա եւ Բ դարուն մէջ գործածուած Գոհութեան աղօթքն Առաքելական պատարագին աղօթքն է։ Ուստի ան համառօտութիւնն որ Յակոբայ եւ Մարկոսի պատարագներուն մէջ եղած է՝ յետնագոյն ժամանակի է։ Նոյնը պատահած կը տեսնուի՝ եթէ մէկը De Trinitate գրքին մէջ գտնուած հանգանակը հռոմէական խորհրդատետրին եւ մեր Պատարագին հետ համեմատէ։ Ուստի Արեւելք եւ Արեւմուտք յայսմ միաբան էին։ Յիշեալ երկու բանն էր միայն որ այլեւայլ պատարագներ կը ձեւացընէր, եթէ Հաղորդութենէ յառաջ

[1] Ռընոտոյ, յիշ. տեղը, Հատ. Ա. էջ 10.

եւ ետքի աղօթքները չհաշուենք։ Թէպէտ նաեւ ըստ այսմ մասին Առաքելական պատարագը նախնական կերպը պահած է, ինչպէս պիտ'որ ցուցուի § 110։

"Ուստի Առաքելական պատարագին հայրենիքը փնտռելը, այս ինքն թէ ո՛ր որոշեալ եկեղեցւոյ կը վերաբերի — անանկ որ մէկալ եկեղեցեաց պատարագներն անկէ տարբեր եղած ըլլան, — ամենեւին տեղի չունի։ Որովհետեւ երից առաջին դարուց պատարագն ամէն տեղ մի եւ նոյնն էր դոյզն տարբերութիւններով՝ որոնք կրնան եղած ըլլալ։ Աս պատարագին հայրենիքն ամէն տեղ էր։ Ասոր հետ մէկտեղ՝ կը կարծենք որ Առաքելական Սահմանադրութեանց յօրինողը Ասորիքէն եղած ըլլայ, եւ ըստ այսմ Առաքելական պատարագն ալ Ասորական (Անտիոքէն). որովհետեւ հաւանական է որ առ այն վերաբերեալ աղօթից ձեւերը անոր մօտերէն ժողված եւ պահուած ըլլան։ Դարձեալ. Պատարագին մէջ Եւոդիոս կը յիշուի՝ որն որ յԱնտիոք առաջին եպիսկոպոս նստաւ։ Նաեւ քշոցները՝ ճանճեր քշելու համար, Արեւելք կ'ակնարկեն։ Ասով կրնայ մեկնուիլ միանգամայն թէ ինչպէս կ'ըլլայ որ Յուստինոս, որ Սիւքեմ ի Սամարիա ծնած էր, այնչափ ճիշդ կը ճանչնայ աս Պատարագը։"

Փոխադ ասկէ ետքը (§ 87) Յուստինոսի նկարագրած պատարագին եւ Առաք. Սհմնդր. Պատարագին նոյնութիւնը երկայն բաղդատութեամբք ցուցընելու աշխատելէն ետքը, վերջապէս կը ժողվէ խօսքն ըսելով՝ "Յառաջ բերուածներուն մէջ անանկ ապացուցութիւն կայ՝ որ անկէ ճշդագոյնն ու ստուգագոյնը չի պահանջեր գիտութիւնը, եւ չի կրնար ալ պահանջել՝ եթէ չուզեր ամէն բան տարակուսանաց մատնել, այս ինքն սա ապացուցութիւնը՝ որ Յուստինոս Առաքելական պատարագը կը ճանչնայ եւ կը նկարագրէ։ Ասով չենք ըսեր թէ իրեն առեր բառ առ բառ ասանկ եղած ըլլայ. սակայն իրաւացի ալ չէ ըսել թէ մինակ ըստ գլխաւոր իրաց եւ գոյացութեան Յուստինոսի նկարագրածին հետ կը միաբանի ան Պատարագը։ Միաբանութիւնը մինչեւ մանրամասնութեանց կ'երթայ եւ շատ անգամ իրօք բառերուն ալ։ Մասանց շարադասութիւնը մի եւ նոյն է։ Աղօթքներուն իմաստը Պատասխանատուութիւն գրող Վկայն չէ թէ մինակ կ'ակնարկէ, հապա շատ անգամ ան աստիճանի ճիշդ կը բացատրէ՝ որ այսօր անկէ աղէկ չի կրնար բացատրուիլ։ Համառօտ ըսենք. Առաքելական պատարագը՝ աննշանակ յաւելուածները չհաշուելով՝ որոնք ետքէն հոն մտած են, Յուստինոսի ծանուցածին հետ մի եւ նոյն է։

"Արդ որովհետեւ Յուստինոս 2րդ դարուն առաջին կէսին մէջ իրեն Պատասխանատուութիւնը գրեց, ուստի եւ ան ոտքէն ընդհանուր գործածութեան մէջ էր մեր պատարագը, հարկաւ ասոր ծագումը մինչեւ մեր թուականին 100րդ տարին հանելու է։ Սակայն պէտք չէ հոս սահման ընելով կենալ. վասն զի այնպէս անտարակուսելի է Յովսէփեան պատարագին՝ Ինքնատեանին հետ ունեցած համաձայնութիւնը, որչափ որ առ Դիոգնետոս գրուած թղթոյն ենթադրած պատարագին՝ Առաքելականին հետ ունեցած միաբանութիւնը։ Աւելի բացայայտ կը խօսի աս Պատարագին վրայ Կղեմէս Հռոմայ եպիսկոպոս։ Անոր համար կրնայ մարդ առանց ընդ բանս ինչ ածելոյ ըսել թէ աս Պատարագը Կղեմայ առեն կար։ Եթէ Առաքելական պատարագը 2րդ դարուն սկիզբը կար, եթէ Կղեմէս Հռոմայեցի յամի 96 նոյնը գործածեց, գիտութեան կանոնաց դէ՛մ կամ ըստ հաճոյս բան մըն է նոյնն Ա. դարուն վերաբերել։ Ասիկայ չի

կրնար ըսուիլ մանաւանդ անոր համար ալ՝ որ Նոր Կտակարանայ գրուածոց մէջ գտնուած նշմարները բոլորն ալ աս Առաքելական Սահմանադրութեանց պատարագը կ'ակնարկեն եւ դէպ ի հոն կը դիմեն։„*

———

Մենք ամենեւին մեզի նպատակ դրած չենք Փրոփսդի աշխատութեան յարգը որոշել կամ իրեն, ինչպէս Պիքքէլ կ'ըսէ, սրամտութեամբ յառաջ բերածները մի ըստ միոջէ քննել. սակայն կը կարծենք որ մեր Պատարագին հնութեանը, ժամանակին եւ գործածութեան նկատմամբ Տրոյ իր եզրակացութեամբն աւելի հաստատ կերպով կը խօսի։ Եթէ չենք սխալիր, շատ անստոյգ ճամբաներէն եւ չափազանցութիւններով կը յառաջանայ Փրոփսդ իր գլխաւոր հետեւութիւններուն գալու։ Թէ Առաքելական Սահմանադրութեանց պատարագը շատ հին է, թէ ըստ կամի շինուած չըլլալով՝ գործածական եղած պատարագ մըն է, արդէն իրմէ բաւական առաջ ծանուցեալ եւ ընկալեալ էր առհասարակ. ալ ատոր ոչ ոք ի գիտնոց կը տարակուսէր։ Բայց թէ ատիկայ բոլոր քրիստոնեայ տիեզերաց մի միայն պատարագն եղած ըլլայ բոլոր երեք առաջին դարուց մէջ, առ այս զմեզ չկրցանք համոզել իրեն աշխատութենէն։ Եթէ քրիստոնեայ պատարագին ընդհանուր յատակագիծն առնունք, այո, չէ թէ մինակ առաջին երեք դարուց՝ հապա նաեւ մինչեւ հիմայ ալ մի միայն Առաքելական պատարագ կայ բոլոր տիեզերք։ Սակայն մի նոյն պատարագ ըսելու համար ուրիշ աստիճանի նոյնութիւններ կը պահանջուին ի բանս եւ յիմաստս, որոնք դժուարաւ ապացուցուած կրնան ըսուիլ Փրոփսդի գործքին մէջ։ Ո՞վ կրնայ ընդունիլ, ինչպէս Փրոփսդ կ'ուզէ, որ աս Պատարագին գոնէ գլխաւոր եւ էական մասը նոյն իսկ Առաքելոց ձեռքէն այնպէս ելլէ, այնպէս Իգնատիոս եւ Կղեմէս Հռոմայեցի գործածէ՝ ինչպէս Յուստինոսի ձեռքը կը կարդայ Փրոփսդ, այս ինքն՝ ինչպէս քիչ մը վերը տեսանք Քունէն բացատրուած՝ Յուստինոսի Ներողութեան անձանց իրարու եւ աշխարհի հետ յարաբերութիւնները՝ զորոնք Փրոփսդ ճիշդ մեր Պատարագին մէջ, այս ինքն անոր էական մասին մէջ, կը գտնէ "Ըստ ամենայնի նոյն տեսութեան վրայ շինուած է Պատարագն ալ„ ըսելով։

* Իւր Նոր գրութեան մէջ այսպէս կը պարզէ Փրոփսդ իւր կարծիքը (Liturgie, § 88, էջ 311 ff.) Դ դարուն՝ պատարագամատուցի կերպարանափոխութիւն մ'եղաւ. ասկէ ազատ մնաց Սահմանադրութեանց Ը գրքինը. անոր համար "հին պատարագամատուցին հաւատարմագոյն օրինակն է։„ Բայց ո՛չ թէ ամենուրեք ճիշդ աս պատարագն էր ի գործածութեան. այլ "ըստ իմ կարծեաց՝ եկեղեցեաց մեծագոյն մասն յատուկ պատարագամատոյց ունէր, բայց ասոնք այնպէս իրարու նման էին, որ մի միայն կաթուղիկէ եւ առաքելական պատարագամատուցին իբրեւ լոկ տեսակներ կը ներկայացընէին։„ Ուստի այս մի միակ, առաքելական պատարագին ամէնէն կատարեալ ներկայացուցիչն է Սահմանադրութեանց Ը գրքինը, թէեւ վերջինս ալ յաւելուածներ եւ եղանակաւորմունք կրած է, եւն։ — Ըսինք վերը (էջ 25, ծան.) որ Փունք (Funk, die apostol. Const. եւն) Ե դարուն սկիզբը կը դնէ յիշեալ պատարագին այժմու խմբագրութիւնն, զոր այլակերպած ըլլայ ընդմիջարկողն հնագոյն պատարագէ մը ձեւելով։ Փրոփսդ երկար կը վիճէ այս կարծեաց դէմ։ Ընդունելով ալ, կ'ըսէ, որ ընդմիջարկութիւն կրած է պատարագը, Ե դարէն յառաջ պէտք է դնել պատարագին այժմու ձեւը։ Վասն զի գիտենք Պրոկղոսէն՝ որ Բարսեղ (330—379) եւ Ոսկեբերան (347—407) կերպարանափոխ ըրին նախնիկիական պատարագը։ Արդ Սահմանադրութեանց պատարագին վրայ ամենեւին ազդեցութիւն չենք գտներ Դ դարու այս կերպարանափոխութեան. ուստի աւելի հին է։ Դարձեալ Նեստորականք 431ին եւ Եւտիքականք 451ին բաժնուեցան եկեղեցիէն, բայց իրենց պատարագամատոյցք կը համաձայնին կերպարանափոխեալ ձեւին հետ եւ ո՛չ թէ Սահմանադրութեանց պատարագին, ուստի վերջինս աւելի հին է, եւն։ ՀՐՏՐ.

Երից առաջին դարուց ընդհանուր եւ բացարձակ միութիւն պատարագի հատուածներուն ընդհանրապէս անանկ բաներ յառաջ կը բերեն ի փաստ, որոնք հիմայ ալ՝ ի զանազանութեան պատարագաց՝ մի եւ նոյն են ըստ կարգի եւ ըստ բանից։

Փրոփսդ, օրինակի աղագաւ, Յուստինոսի գործածած պատարագն Առաք. Սհմնդր. պատարագն եղած ըլլալը ցուցընելու ատեն, (որն որ անցողակի ըսելով, կրնայ ըլլալ, առանց անով ցուցուած ըլլալու որ մի եւ նոյնը բոլոր քրիստոնեայ տիեզերաց էր, եւ թէ անկարելի էր որ ասիկայ առանձնական ըլլայ եւ Գնոստիկեանց դէմ յարմարուած ձեւ մ'առած Գոհութեան աղօթքին մէջ,) "Պատարագը (կ'ըսէ Փրոփսդ) կ'ենթադրէ՝ Երախայից պատարագին մէջ կարգադրուած բարեկարգութիւն մը՝ երախայից, ապաշխարողաց եւ այլոց նկատմամբ։ Աս բարեկարգութիւնը գիտէ Յուստինոս ալ. վասն զի Գոհութեան հանդիսութենէն արտաքսուած են, ըստ Յուստինոսի, անհաւատք, երախայք եւ ապաշխարողք։„ Արդեօք նոյն դարուն մէկ ըստ շարադրութեան տարբեր պատարագը զասոնք պիտ'որ չարտաքսէ՞ր։

"Աստուածային պաշտօնը, ըստ Յուստինոսի ինչպէս նաեւ ըստ Պատարագին, սուրբ Գրքէն առնուած ընթերցուածներով կը սկսէր, որոնց կը հետեւէր եպիսկոպոսին խրատը։„ — Ո՛ր եւ իցէ տարբեր շարադրուած եւ կարգադրուած պատարագ ալ նոյն սկզբնաւորութիւնը կրնար ունենալ, եւ էր ընդհանուր սովորութիւն, ինչպէս հիմակուան տարբեր տարբեր պատարագներուն ալ նոյն սովորութիւնը նախընթաց կ'ըլլայ։

"Ասոր կը յաջորդէին, ըստ Պատարագին, Աղօթք՝ զորոնք սարկաւագը կ'ըսէր, եւ ժողովուրդը կը պատասխանէր Κύριε ἐλέησον. Յուստինոս գիտնալով զΚύριε ἐλέησον, կ'ակնարկէ προσφώνησις-ի եւ ἐπίκλησις-ի զանազանութիւնը։„ — Ասոնք մեր պատարագներուն մէջ ալ, որչափ զանազան ըլլան, կան. նոյնպէս կրնային ըլլալ ան դարերուն մէջ, ո՛ր եւ իցէ զանազանութիւն մնալով։

"Պատարագին մէջ այսահարաց եւ ապաշխարողաց եղած աղօթքներուն կրնան առանց բռնաբարութեան վերաբերիլ ասկէ յառաջ մեր (§ 31) Յուստինոսէն յառաջ բերած խօսքերնիս։„ — Շատ դիւրին է ո՛ր եւ իցէ ժամանակի եւ տեղւոյ այսահարաց եւ ապաշխարողաց վրայ եղած աղօթքն աս կերպով վերաբերիլ։

"Վերջին աղօթքին մէջ Պատարագը կ'աղօթէ հաւատացելոց, նորատնկաց, հիւանդաց, ճանապարհորդաց, ի մեռալս, յաքսորս եւ ի բանտի եւ ի կապանս գտնելոց համար, որպէս զի Տէր զանոնք իր շնորհօքը պահէ եւ իրեն երկնից արքայութիւնը ժողվէ. (Գ. Ժ։) Ըստ Յուստինոսի հաւատացեալք կ'աղօթեն նորատնկաց, հիւանդաց եւ կալանաւորաց համար ալ, որպէս զի պատուիրանները պահեն եւ յաւիտենական փրկութեան հասնին։„ — Շատ են հիմայ ալ պատարագներ իրարմէ տարբեր՝ որոնք նոյներուն համար կ'աղօթեն. ան դարուն մէջ հարկաւ անոնց մէջ "նորատունկք„ (νεόφυτοι, neophyti) ալ կը գտնուէին։

Նոյնը կը կրկնենք Փրոփսդի յաջորդ համեմատութիւններուն։

"Համբոյրն ու պատարագաց մատուցումը նոյն կերպով կը պատմէ Յուստինոս՝ ինչպէս Պատարագը։ Ըստ Յուստինեայ՝ վերակացուն կամ գլխաւորը Գոհութեան աղօթքը մինակ կ'ընէ հանդիսական խօսքերով, օրհնութեան ձեւով, մինչ դեռ հաւատացեալք կանգուն կը կենան։ Պատարագը կը հաստատէ Յուս-

*տինոսի ամէն խօսքը։» — Աս խօսքերը մեր գիտցած պատարագներուն ալ ճշդիւ յարմար են, մեր չգիտցածներուն ալ շատ աղէկ կը յարմարէին, տարակոյս չունինք. եւն, եւն։*

---

*Երեք առաջին դարուց պատարագին նկատմամբ Հայոց քով ի զուր է բան մը գտնել յուսալ։ Սակայն աս տարաբախտութեան պատճառն ան չէ որ Հայք ան դարերուն մէջ դեռ հեթանոս էին։ 4րդ դարուն սկզբան արդէն քրիստոնեայ էին, անանկ որ իբրեւ քրիստոնեայք կռուեցան 311ին Մաքսիմինոս կայսեր դէմ։[1] Ուստի շատ աղէկ կրնային Առաքելական Սահմանադրութեանց մէջ գտնուած (Գիրք Ը. եւ Գիրք Բ.) պատարագներուն հնութեամբ հաւասար պատարագ գործածել. եւ թէ լոգք ալ նոյնպիսի պատարագ մը գործածած են՝ չի կրնար տարակուսուիլ։ Եթէ մեր ազգին նոյն իսկ գիտնոց հարցընենք, ինչպէս տեսանք, կարծած են եւ դեռ կը կարծեն թէ աս իրենց առաջին Լուսաւորչին գործածածն է որ ցայսօր կը գործածեն։ Սակայն մեր Լուսաւորչին եւ անոր ժամանակաւ մերձաւորներուն գործածածը՝ տարակոյս չկայ՝ որ նոյն իսկ իրենց ապրած դարէն ասդին չգործածուեցաւ՝ գոնէ առհասարակ. վասն զի, ինչպէս բոլոր Յունական եկեղեցւոյ մէջ իրենց Լիտուրգիային վերաբերեալ բաները վերաքննութիւն* (récognition) *մ'ունեցան, նոյնպէս ալ Հայոց քով աս վերաքննութեան եւ ճոխացեալ մատեաններուն տեղի տուաւ հինը՝ Նախնիկիականը* (anteniciana)*։ Բայց կրնար աս հինէն եւ կամ ուրիշ ասոր հաւասարէն բան մը հայ մատենագրութեան մէջ գտնուիլ, ինչպէս ուրիշ շատ բաներ գտնուեցան։ Այլ դժբախտաբար կրնանք ամենայն վստահութեամբ ստուգել գիտնոց որ ան Առաքելական Սահմանադրութեանց պատարագին հնութեանը հասնող պատարագի մը եւ ոչ մէկ հետքը գտած ենք ցայսօր մեր դեռ բազմօք անտիպ* (inédit) *մատենագրութեան մէջ. նոյն իսկ վերյիշեալ Սահմանադրութեանց անգամ ոչ հին եւ ոչ նորագոյն մէկ թարգմանութեան մը նշմարանքը։*

*Ասոր փոխարէն՝ անմիջապէս յաջորդող ժամանակին համար բաւական առատ լոյս կը հեղուն՝ Հայոց քով ցայսօր կէս մ'անծանօթ եւ կէս մ'ալ առանց մտադրութեան մնացած քանի մը հին Յիշատակարանները։*

## Ե.

## ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ՊԱՏԱՐԱԳ

*Ով. որչափ բարձր եւ քանի՜ սքանչելի ըրաւ Աստուած իր բազուկը բոլոր Հռոմէական պետութեան վրայ՝ երբ որ իր հաւատարիմ ծառայից այնչափ համբերութենէն ետքը բոլոր բռնաւորներն իր լուսաւոր Նշանին զօրութեամբն յաղթահարած՝ հեղութեան եւ արդարութեան միահեծան ինքնակալ մը շնորհեց։*

*Մի եւ նոյն ատենները զօրացոյց վերջապէս իր ողորմութիւնն անոր սահմաններէն դուրս երկրի մը վրայ, ուստի կ'աղաղակէին իրեն՝ ընտրեալ ծառայ մը եւ իբրեւ զաղաւնիս երամովին հեռուանց եկած կուսանաց արիւնը։*

*Հռոմէական պետութիւնը՝ որուն թագաւորք եւ իշխանք շատ կողմանէ կը դիմէին ան ատեն, նիզակակից դաշնաւոր մ'ալ կ'ունենար թագաւոր հաւա-*

---

[1] Եւսեբ. Եկեղ. Պատմ. Թ. գլ. Ը։

տակից՝ որն որ չի դանդաղէր իր առ Աստուած եւ առ մարդիկ հաւատարմութիւնը ցուցընելու՝ նաեւ զինու զօրութեամբ արիւնախանձ բռնաւորին (Լիկիանէսին) դէմ,[1] պատուեալ եւ արտօնացեալ եւ ընտանեցեալ Հռոմայեցւոց արքունիքը իբրեւ Արշակ[2] Հայոց աշխարհի իշխեցող թագաւոր։ Դաշանց պատճէնը չէ թէ յիշատակաւ, այլ իրօք՝ գոնէ մինչեւ 5րդ դարուն կէսին առ Մարկիանոս կայսերբ կեցած էր։

Սակայն այս չէ, հապա ուրիշ էր բոլոր երկրին համար բարութեանց լրումը։ Կաթուղիկէ եկեղեցի՝ որն որ ոչ լեռներով եւ ոչ գետերով սահման կ'առնու, մեծատարած աշխարհ մը, միլիոններ կը ստանայ՝ մէկ անզուգական քահանայապետի մը ձեռօք՝ երջանիկն Գրիգորի։ Արդէն վերոյիշեալ թագաւորին յարաբերութիւնները գուշակ պէտք են ըլլալ ամէն մտացեաց՝ որ չէին կրնար առանց բարձրագոյն օրհնութեան մ'ըլլալ մեր սկզբնաւորութիւնք։ Բայց բախտով 5րդ դարուն սկիզբներէն մեր պատմութեան ամէնէն ստոյգ կէտերէն մէկն է՝ որ երթ մը, տեսութիւն մը եւ հոգեւոր օծութիւն մը ժառանգուած է ան միութեան կենդրոնէն՝ ուր մեր Հայրը ոչ թէ դաշինք կը դնէ — քաւ լիցի, — այլ սուրբ համարձակ կ'ընդունի յերանելի եպիսկոպոսապետէն Հռոմայ յՆւսեբիոսէ։[3] Ո՜վ Քրիստոսի փոխանորդին աշակերտ եւ որդի ըլլալու դաշնադիր կրնայ ըլլալ։ Աս է մեր հայոց մաքուր աւանդութիւնը եւ ոչ ուրիշ։[4]

Աս սուրբ ժառանգութենէն եւ իրեն նուիրական ոսկիներէն ի զատ՝ որոնք սրբոյն Պետրոսի հովանւոյն տակ կը պահուին ցայսօր մարգարիտներու եւ ականց պատուականաց պէս, յովտ մի՝ որ նշանախեց մի է՝ չունինք իրմէ մեզի պահուած. այսչափ դժբախտ ենք։ Չխաբուինք, աւելի ունինք ըսելու՝ թէ ինչ իրեն չէ։

Սուտ է, ինչպէս արդէն ըսինք, որ ոմանք ցայսօր իրմէ պատարագ մը կը ցուցընեն։ Պիտ'որ տեսնենք ճիշդ անոր ծագումը։*

---

[1] Եւսեբ. Եկեղ. պատմ. անդ.

[2] Առանց „Arsaces" գիտէ վանիկայ Թէոդոսեան Օրինաց մատեանը (Cod. Theod. 315), երբ որ Կոստանդիանոս Ա. կայսեր հրամանը յառաջ կը բերէ իր համարակալին Եւսեբիոսի՝ որ Արշակայ կալուածքն ապահարկ ըլլան։ Այսպէս ուրիշ անուն ունէին ի Հռոմ շատ անգամ Հայոց թագաւորք. կը տեսնենք որ մեր Արտաշէս (Բ) ըսուածը՝ առ Ներոնիւ Հռոմ կ'անուանէին Տրդատ։ Նոյնպէս մեր Տրդատը կ'անուանեն եղեր Արշակ։ Բայց ոչ առանց հիման։ Իրօք ալ ատանկ, ինչպէս կ'երեւայ, կ'ապահովցուի. վասն զի ինք՝ իբրեւ Խոսրովայ որդի՝ կ'ունենայ որդի եւ յաջորդ՝ զԽոսրով (Բ), եւ Խոսրով (Բ) կ'ունենայ զԱրշակ (Բ). Ուստի Տրդատայ մէկ անունն է Արշակ, որն որ թոռան վրայ նորէն կը դառնայ, եւ հաւանականաբար՝ հանդիսական մէկ անունը, ինչպէս Յովհաննէս՝ մկրտութեան։ Անոր համար անտարակուսելի է Թէոդոսեան մատեանինը։

[3] Ագաթ., էջ 649 եւն. Ճիշդ այսպէս կ'երեւայ, նայելով լաւագոյն ձեռագիր մատեաններուն, եւ ոչ՝ Սեղբեստրոս, որն որ Նիկիոյ ժողովին պատմութենէն եկած մասն կ'երեւայ եւ որ Եւսեբեայ յաջորդն է։

Տես եւ Տիեզ. պատմ. Հ. Յ. Դաթրճ. Բ. հտր. էջ 479: ՀՐՏՐ.

[4] Դեռ սուրբ Հօրմէ 150 տարի ետքը Շահապիվան ժողված Հայոց եպիսկոպոսունք եւ նախարարք աշխարհանաց կը խոստովանին թէ ի սկզբանէ սուրբ հաւատքը Հռոմայ եպիսկոպոսէն ընդունած են։ Եղիշէ, Թղթ. ժողովոյն. (Պատմ. Վենետ. 1859, էջ 54—55.)

* Հոս աւելորդ չէ մտադիր ընել որ Ս. Գր. Լուսաւորչի պատարագ մ'ընծայելու կնդծիքը բաւական հին է, եւ իւր ազդեցութիւնն ունեցած նաեւ ուրիշ արեւելեան գրականութեանց վրայ: Լուսաւորչի անուամբ պատարագ մը կը գտնենք եթովպացերէն՝ Պերլինի արքունի գրատան եթովպական ձեռագրաց մէջ թիւ 34. (Peterm. II. Nachtr. 36.) Այս ձեռագիրն՝ ըստ Տիլմանի ցուցակին՝ (A. Dillmann, Verzeichniss der abessinischen Handschriften der königl. Bibl. zu Berlin. Berlin 1878, p. 26) այլեւայլ պատարագներ կը բովանդակէ, որոնց տասներորդն է Պատարագ "Ս. Գրիգորի Հայոց." (fol. 75a—78.) Տարբեր բան ըլլալու չէ Փարիզի ազգային մա-

*Սուտ է նոյնպէս որ Հանգանակ մը կը կոչուանք՝ իրմէ կազմուած։ Կը տեսնենք նոյնպէս ասոր ուստի ըլլալը։* Երկուքն ալ գոնէ հնոց համոզում մը չէ. Նոր եւ անհիմն կարծիքներ են։ Ան խօսքը "Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս„ եւն՝ չէ ցուցուած թէ իրօք իրենն ըլլայ։*

*Սակայն սիրով կը ներուէր ասանկ ըստղներուն՝ եթէ միայն հոս մնային։ Բայց մեծ դժբախտութեամբ մը՝ անանկներ ալ սրբազան Խորհրդոյն նկատմամբ կ'ընծայուին Սրբոյն՝ որ մեծ խայտառակութիւն եւ անհանդուրժելի այլանդակութիւն է։ Եթովպացի սեւերը թուխ կը նկարեն հրեշտակներն ալ. Հայերը անապակաւ պատարագել կու տան իրենց Սրբոյն։ Ասոնք խաւարային ժամանակէ մը ժառանգելով աս մոլորութիւնը՝ յանկարծ իրենց Լուսաւորչին բեռնաւորելով կ'ուզեն անմեղացընել։ 8րդ դարուն եպիսկոպոսաց ժողով մը կը յանդգնի աս վճիռը յախուռն բերել.[1] "Կան. Ը. Արժան է եւ զհացն՝ անխմոր, եւ զգինին՝ անապակ հանել ի սեղանն, ըստ աւանդելոյն մեզ սրբոյն Գրիգորի, եւ չխոնարհել[2] յայլոց ազգաց քրիստոնէից յաւանդութիւնս։ Զի սուրբ Լուսաւորիչն՝ յօրինականէն բերեալ զայս, առաքելաբար հրաման ետ կատարել իւրոց վիճակելոցն։„[3]*

---

տենադարանին թիւ 111 եթովպական ձեռագրինն ալ, որ ըստ Զօթէնպէրկի (Zotenberg, Catalogue des mscr. éthiop. Paris 1878, p. 109.) կը բովանդակէ նախ (fol. 7) "Ս. Գրիգորի Լուսաւորչի՝ հայրապետի Հայոց աշխարհի, վկայի՝ առանց արեան հեղման„ (խոստովանողի) Վարքն, եւ ապա նաեւ (fol. 28 եւն.) Երեք քաղուածք ի Պատարագէն նորին Սրբոյ, ինչպէս նաեւ քաղուած մ'ի թղթոյ Պրոկղի առ Հայս, եւ երկու հատակոտորք "Եւպրաքսիոսի հայրապետին Հայոց:„ Դժբախտաբար այս երկու կարեւոր ձեռագիրներէն եւ ոչ մէկը կրցանք տեսնել, որոնց բովանդակութիւնն անշուշտ առանց օգտի չէ հայ մատենագրութեան քննութեան համար: Ս. Լուսաւորչի Վարքն եւ Հատուածք անոր վերագրեալ "Վարդապետութենէն„ (առ Ագաթ.) ցանցառ չեն Արեւելեաց քով: Օրինակի համար՝ Լուսաւորչի Վարքը կը գտնուի Փարիզի թիւ 126 (Zotenberg, p. 168, § 15) ձեռագրին մէջ: Տրդատայ դարձին Պատմութիւնը կցելով Ս. Սարգսի եւ Հայոց գրոյ գիւտի պատմութեանց հետ՝ հետաքրքրական միպախառն գրութիւն մը ծագած է "Տերտագ արքայի„ վրայօք Պերլինի թիւ 64 եթովպական ձեռագրին մէջ (Peterm. Nachtr. 38, fol. 83) որ եւ հրատարակուած ալ է. (տես Bachmann, Aethiopische Lesestücke, Leipzig 1891. p. 1—8. R. Basset, Les apocryphes éthiopiens, IV. Les légendes de S. Tërtag, Paris, 1894.) Պոտլեան գրատան եթովպական ձեռագրաց ցուցակին համեմատ (Catal. cod. Mscr. Bibl. Bodl. Pars VII Codices Aethiopici, digessit A. Dillmann. Oxonii 1848) կը գտնուի թիւ 34 ձեռագրին մէջ, (տես Ցուցակ՝ էջ 83,) ուր նաեւ հայերէն այբուբենք մը գրուած կայ (fol. 3), Քաղուածք մ'ի Մեկնութենէ Եփրեմի ի ծնունդս, եւ "Հատուածք ի Գրիգորէ Լուսաւորչէ„ ուստի ի "Վարդապետութենէ„ Ագաթանգեղեայ: Նոյնը կը գտնենք արաբերէն լեզուաւ թիւ 144 ձեռագրին մէջ, (տես նոյն Ցուցակ՝ էջ 470.) որուն մէջ կայ (fol. 117) հետեւեալ կտորը՝ وايضا من قول مرى غريغوريوس الذى تلمذ الارمن وهو على الارمن ("Դարձեալ ի բանից Տեառն Գրիգորիոսի, որ աշակերտեաց զՀայս, եւ հայրապետ էր Հայոց.„ ճշդիւ՝ "եւ է ի վերայ Հայոց:„) Վերջապէս Պերլինի թիւ 28 (Msc. Or., տես Տիլման էջ 21) ձեռագրին մէջ կայ գրութիւն մը՝ "Հաւատք Հարց,„ (fol. 356) որուն մէջ կը յիշուի եւ ի վկայութիւն կը կոչուի նաեւ "Գրիգոր եպիսկոպոս Հայոց աշխարհին„ եւ "Ափրոսիոս՝ հայրապետ Հայոց աշխարհին:„ ՀՐՏՐ.

* Տես՝ "Հանգանակ հաւատոյ, որով վարի Հայաստանեայց Եկեղեցի:„ Քննութիւն Հանգանակին ծագման, հեղինակին եւ ժամանակին վրայ, Վիեննա, 1891: ՀՐՏՐ.

[1] Յովհ. Աւձն. տպ. Վենետ. 1822, էջ 25։

[2] Յօրինակին՝ ու խոնարհել։

[3] Քիչ եղած է եկեղեցական պատմութեան մէջ ասոր չափ համարձակ արձանագրութիւն՝ ուր յանդուգն գաղափարաց խուռն բազմութիւն մը նետուի՝ առաքելաբար հրամայեց ըսելով. որն որ աւելի բացայայտ կ'ըլլար թէ որ ըսուէր՝ [illegible] Աստուծոյ կենդանւոյ. վասն զի ով ուրիշ մը զօրէնսդրականները նորէն "օրէնսդրականերու„ (ինչպէս կ'ըսուի) կրնար գործընել։ 400 տարի ետքը աս կրիւք լցեալ եպիսկոպոսունք առանց ապացոյց մը բերելու կը վկայեն թէ Ս. Գրիգոր հրաման կու տայ զգինի անապակ հանել ի սեղան, Քրիստոսի Սահմանադրութեան դէմ՝ որն որ զբաժակ ի գինւոյ եւ ի ջրոյ լցընելով (ինչպէս

*Ի՞նչ գեղեցիկ աւետարանիչ կը ստեղծեն իրենց աս հովիւները, ոչ Քրիստոսի զատկէն՝ բաղարջ կ'առնու, եւ ոչ իրեն բաժակէն՝ բաժակ, այլ նորէն հնոյն դառնալ կը մտածէ։ Մենք Քրիստոսի բաժակը գիտենք եւ ոչ ուրիշները։ Միայն իրեն բաղարջովը լաւ է անխմոր վարիլ։*

*Արդէն ընդդէմ ելած էին իրենց՝ Արեւմտեան գրացիք, (Ժող. Տրուղ.) զայրացած էին Արեւելեայք՝ Ասորիք, ըստ իմիք իրենց հաւատակիցք։ Ո՞վ է աս Գրիգորը, — կը գրէ 8*[րդ] *դարուն ասորի եպիսկոպոս մը,* — Առաքեալներէն մե՞ծ է։ Նայեցէք չորս հայրապետական աթոռները. ո՞ւն ունի։*

*Իրաւ է, Սուրբերն ալ անսխալ չեն, կրնան սխալել, սակայն դժուարին է մտածել որ Աստուած իւր քաղցրութեամբն առանց քարոզութեան համար ընտրեալ մարդոյն թոյլ տայ որ չափերն այնպէս անցնի՝ մինչեւ մոլորեցընել ժողովուրդ բազում եւ դարեր։*

*Աստուած իր Սուրբն արդարացուցած է։ Նոյն իսկ յիշեալ ժողովոյն գահերէցը քանի մը տարի ետքը բոլոր Հայաստանի կանոնադրութիւնները կը հաւաքէ, — ունինք այսօր զանիկայ անթերի, — բայց չի գտներ կանոն մը ի Սրբոյն Գրիգորէ կամ անոր յաջորդներէն՝ որ նման ըլլայ իրենին, 8*[րդ] *դարուն. կը պակսի այսպէս բոլորովին աս ձրի ենթադրութեան վկայութիւն մը՝ 400 տարի Սուրբէն ետքը։*

*Այսպէս ստած է ինք զինք ան վճիռը [illegible] աշխարհօրէն։ Հազիւ անկէ ետքը խենթ բաներ խօթուած են։*

*Խնամած է Տէր՝ Սրբոյն համբաւը [illegible] ալ տիեզերական եկեղեցւոյ առջեւ։*

*Աս վճռէն 200 տարի յառաջ՝ Հայաստանի համար կը վկայուի որ այսպիսի չարաչար սովորութիւն չկայ, այլ անոր հակառակ՝ հաց, գինի եւ ջուր կ'ըլլէ պատարագի, եւ բոլոր ժողովուրդը զատնք կը բռնէ։ Այսպէս վկայուած է, ինչպէս իր ժամանակակիցք կ'անուանեն, "Հրեշտականման,"*[1] *Կաթողիկոսէ մը հրապարակախօսութեամբ, որուն աս նուիրագործական իրաց հմտութեանը, (թէ՛ հաւատալեաց եւ թէ՛ բարոյական) վարդապետութեան մաքրութեանը նման երկրորդ հայ մը դժուարին է ցուցընել. Յովհան Կաթողիկոս Մանդա-*

---

առաքելական պատարագամատոյց ունին) եւ ըսելով թէ աս է իրեն արիւնն, պատուիրեց "Զայս արարէք առ իմոյ յիշատակի,"

Ուրիշ խնդիր մըն է հացին խնդիրը. բայց թէ որոշակի ինք Ս. Գրիգո՞ր անխմոր սահմաներ է եւ ոչ մանաւանդ ուրիշ պարագաներով մուտ գտեր է աստ աղնուական կիրառութիւնը՝ անկարող էին որոշակի ըսելու աս Հայք։ Բըռնելու պատճառ մը ոչ անոնք ան ատեն եւ ոչ մեք այսօր ունինք՝ որ հաստեցընենք թէ այնպէս ըրած է. այլ աս միայն՝ որ ի Կեսարիա այնպէս կ'ըլլար։ Ասոր համար՝ մանանխոյ մը հատի չափ հաւատք ընծայել չ'արժեր։ Իրմէ ետքը կամաց կամաց ուրիշ եղան ատեններն ու հանգամանքները։

* Ասորւոց Գէորգ Եպիսկոպոսն առ Յեշուայ ուղղեալ թղթին մէջ: Հոն կը պատմէ Ս. Գրիգորի կենսագրութիւնն, եւ միանգամայն կը յիշէ բաժակի խնդիրը, ըստ որում հայ մ'ըսած էր Յեշուայի՝ թէ Ս. Գրիգոր հրամայած ըլլայ անջուր պատարագել. որուն Գէորգ կը պատասխանէ թէ Գրիգոր չէ հրամայած այս բանս: Այս Նամակին ասորի բնագրէն ի հայ թարգմանութիւնը կը գտնուի ի գիրս "Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի Եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ Գրոց," ի Հ. Յ. Տաշեան. (Վիեննա 1891, էջ 4—10. բաժակի կտորը՝ էջ 7։) Գէորգ Նամակը գրած է 714 Յ. Ք. ուստի այն ատեն արդէն խնդիրը սաստկացած էր Հայոց եւ Ասորւոց մէջ: ՀՐՏՐ.

[1] Ղազար Փարպ. (տպ. Վենետ. 1873) էջ 372 եւ առաջ։

կունի է որ մեր բոլոր ոսկի դարուն միտքը կը ներկայացընէ,[1] Ս. Սահակայ աշակերտ,[2] անմահն Գիւտայ Կաթողիկոսի եղբօրորդի:[3]

Ի՞նչ կ'ըսէ աս հրեշտակաման Հայրը:

«Ինք Քրիստոս է. մի՛ իբրեւ հասարակ հաց նայիս, եւ մի՛ իբրեւ գինի կարծես եւ տեսնես. վասն զի տեսնելու բան չէ սուրբ Խորհրդոյ ահաւոր եղած բանը, հապա մտքով իմացուելու խորհութիւն. որովհետեւ ոչինչ տեսանելի աւանդեց մեզի Քրիստոս սուրբ Խորհրդոյն եւ մկրտութեան մէջ, այլ իմանալի: (Հաց եւ գինի եւ) ջուր կը տեսնենք, բայց աստուածային բանին կը հաւատանք [սրբագործութենէն ետքը] թէ «Այս է մարմինս եւ արիւնս,» եւ թէ «Ով որ ուտէ իմ մարմինէս եւ ըմպէ արիւնս, ան յիս կը բնակի եւ ես անոր մէջը» . . . զանիկայ կ'իմանանք սեղանոյն վրայ . . . զանիկայ կը տեսնենք, զանիկայ կը շօշափենք . . . զանի ներս կ'առնունք եւ կ'ընդունինք» եւն:[4]

---

[1] Բայց հալածուած ալ է իր խօսքն, ինչպէս ամէն ասոր պէս վկայութիւնները. հայերէն երկաթագիր մը մեզի բաւական աղաւաղ է, թէպէտ նորագոյն ընդօրինակութեանց մէջ հետքը ջնջուած է: Երկաթագրին ընդօրինակողն ալ աւրել ուզած է, բայց բաւական չէ յաջողած չփոթութեամբ. այսպէս փակագծի մէջ առնուածները (տես վարը՝ Ծան. 4)

[2] Յովհ. Կթղ. Շարագր. Հայրապ.:

[3] Ղազար. Թղթ. առ Վահան Մամիկ. էջ 595: Անշուշտ առանց նշանակութեան չէ որ 1871ին Եւրոպայի եկեղեցականք իրեն ճառերը թարգմանած տպած են. (Heilige Reden des Johannes Mandacuni, Katholicos und Patriarch der Armenier, übersetzt etc. von J. M. Schmid. Regensburg 1871 )

[4] Մանդ. Ճառ ԻԲ. էջ 161. «Մի իբրեւ ի լոկ հաց հայիցիս, եւ մի իբրեւ զգինի համարիցիս եւ տեսանիցես. զի ոչ տեսանելի է ահաւորութիւն սուրբ Խորհրդոյն, այլ իմանալի՝ զօրութիւնն. քանզի ոչ ինչ տեսանելի աւանդեաց մեզ Քրիստոս ի Խորհուրդն եւ ի Մկրտութեանն, այլ իմանալի: (Հաց եւ գինի եւ) ջուր տեսանեմք, այլ աստուածային բանին հաւատամք որ ասէն եթէ Այս է իմ մարմին եւ արիւն, որ ուտէ ի մարմնոյ իմմէ եւ ըմպէ յարենէ իմմէ, նա յիս բնակեսցէ եւ ես ի նմա . . . զՔրիստոս իմանամք ի վերայ սեղանոյն . . . զնա տեսանեմք, զնա շօշափեմք . . . զնա առնումք ի ներքս եւ ընդունիմք:» — Յառաջ «Հաց եւ գինի» ջնջելով կարծած է որ այնչափ բաւական ըլլայ՝ խօսքը յիշուած մկրտութեան ջրոյն հետ կապելու:

Բայց գանք քիչ մ'ալ մօտանց դիտելու աս Մկրտութեան խօսքը: Ընդօրինակողին աս Մկրտութեան բառին ընդմիջարկութիւնը շատ անյաջող եւ անյարիր եղած է, ինչպէս տեսանք: Մեր սուրբ Հօր ճառերուն «Նախադրութիւնը» որն որ աս հասարակ ամէն մէկ Ճառին համառօտ՝ բայց բաւական ճիշդ իմաստը կը բովանդակէ, առաջիկայիս համար՝ միայն աս կ'ըսէ. «Վասն զգուշութեամբ ի սուրբ Խորհուրդն մերձենալոյ. եւ որպէս պարտ է . . . ընդունել ի մարմնոյ եւ յարենէ Տեառն մերոյ . . . եւ եթէ . . . որ . . . ի Խորհուրդն մերձենայ . . . եւ եթէ որպիսի սրբութեամբ . . . ի սուրբ մարմինն եւ յարիւնն տէրունական մերձենալ» եւն. իսկ Մկրտութեան վրայ ամեներին յիշատակութիւն չ'ըներ: Նոյնպէս առաջիկայ ԻԲ. Ճառին «Վերնագիրը» մկրտութեան նկատմամբ ակնարկութիւն մը չունի: Նմանապէս բովանդակ ճառը միայն Հաղորդութեան խորհրդոյն վրայ կը դառնայ ծայրէ ի ծայր, եւ ոչ միով նշանախեցիւ կը մօտենայ մկրտութեան խորհրդոյն: Վերը յառաջ բերուած հատուածին մէջ երկու անգամ կը դառնայ Հաղորդութեան խօսքը: Մէյ մը «Զի ոչ տեսանելի է ահաւորութիւն սուրբ Խորհրդոյն» խօսքին մէջ. հոն մկրտութեան յիշատակութիւն չ'ըլլար, եւ ընդօրինակողն ալ Մկրտութեան ընդմիջարկութիւն չ'ըներ: Մէյ մ'ալ նոյն խօսքն անմիջապէս մեկնուած ատեն, «Քանզի ոչ ինչ տեսանելի աւանդեաց մեզ Քրիստոս ի Խորհուրդն.» հոն՝ ուստի՞ կը գանէ յանկարծակի եւ կը յաւելու ընդօրինակողը «Եւ ի Մկրտութեանն:» Վերի խօսքին վրայ անմիջապէս կը յարէ սուրբ Հայրը «Հաց եւ գինի եւ ջուր տեսանեմք, այլ աստուածային բանին հաւատամք որ ասէն, եթէ Այս է մարմին իմ եւ արիւն.» հոն՝ եթէ ջուրը մկրտութիւն ակնարկէր, ինչպէս կը կապուէր աստուածային բանին հետ՝ «Այս է մարմին» եւն: Վերջապէս բովանդակ ճառին մէջ մի միայն «ուտել — ըմպել — մերձենալ — շօշափել — համբուրել — ի ներքս առնուլ — ընդունել» կը յիշուի՝ որոնց բոլորն ալ միայն Հաղորդութեան նկատմամբ կրնայ իմացուիլ, եւ ոչ այլազգ: իսկ «Մկրտել կամ լուանալ, լուացուրել — թաղել կամ ընկղմել — օրհնել» կամ ուրիշ

*Ընդօրինակողն իմաստը շփոթելու աղաւաղելու ջանք մ'ըրեր ուզած է "Հաց եւ գինին" գեղչելով, որոնք արդէն յառաջագոյն յիշուած են եւ ետքէն նորէն կ'ենթադրուին "մարմին եւ արիւն" համապատասխանող խօսքերով. բայց անոնցմէ ետքը Հաղորդութեան խօսքն երկննալով՝ ալ գեղչումն անկատար թողուցած է։ Բաւական բացայայտ խօսողէն իմաստը կ'աղաղակէ։ Նշանաւոր է ջոջ բառին Յովհաննէս Հոխոր Քեռներին մուալը։ Ուրեմն ասիկայ ջնջեր եւ նախընթացները թողուր, կ'անցնէր նենգութիւնն առանց իմացուելու, բայց չէ եղած։ Փառք Տեառն։*

*Անոր համար երթան, թէ որ կ'ուզեն, մեր Աւետարանիչը նախատելու, բայց չմոռնան՝ "Որ ձգէ քար երկնապող ի գլուխ իւր ընկենու," դէպ ի երկինք քար նետողը՝ իր գլուխը կը ձգէ։ Աս մեծ վկայութիւնը զամէնքը պապանձեցընելու բաւական է՝ թէ միայն կոյր կիրք չյաղթէ։*

*Բայց մենք ալ'որ տեսնենք ուրիշ անգամ մ'որ Յովհան Մանդակունի Քրիստոսի խառնելու բաժակը Հայոց կը յանձնէ, ըսեն ինչ որ կ'ըսեն իրեն յաջորդ կարծուողները՝ Մանդակունիէ 200 տարի ետքը։*

*Աս եւ այսպիսիները մեր առաջին Լուսաւորչին նկատմամբ բնականապէս աւելի որոշ կրնանք գտնալ — վասն զի կը վերաբերին սրբազան պատարագին ըստ ինքեան՝ որուն ինք ոչ օրէնսդիր, այլ սպասաւոր մըն էր՝ — քան թէ գտնալ ինչ խորհրդամատոյց ձեռքն ունէր՝ երբ որ փրկութեան աւետաց նոր երկիրը մտաւ։ Ուրեմն Փրոփոդ արդարացած ըլլար իր վերջիշեալ ան ատենուան մի միայն առաքելական պատարագաւը, ուրիշ բան չկար մեղի՝ բայց եթէ նոյնը իբրեւ մեր Հօրն խորհրդամատոյցը ցուցընել։ Բայց ո՞վ կրնայ տարակոյս հանել որ նոր ձեռնադրեալն իր ձեռնադրողէն, Ղեւոնդիոսի Կեսարու Կապադովկացւոց եպիսկոպոսապետէն, որն որ մեր պատմութեան հաստատուն կէտերէն մէկն է, հետեւած ըլլայ, ուստի եւ ան արդէն ի գիր անցած Նախնիկիական պատարագամատոյցներէն աս եկեղեցւոյնը ընդգրկած ըլլայ, որուն նշմարանքը՝ 4րդ դարուն նոյն նահանգին մէջ փոխանակուած պատարագամատոյցներէն հազիւ կարող կ'ըլլանք փնտռել հետաքրքրութեամբ, եւ անոնց մէկը կամ երկուքն առաջիկայիս մէջ կ'ունենանք։*

---

բառ մ'որ Գրտոսընեան կարենայ ակնարկել՝ չի յիշուիր ամենեւին։

Արդ՝ կ'ըսենք, ուստի կը գտնէ յանկարծ աս Գրտոսընեանը մեր ընդօրինակողը։ Ո՞վ չի տեսներ, ո՞վ չի շօշափեր հոս՝ ընդմիջարկողին (interpolateur) կողմանէ անհեթեթ եւ յանդուգն նենգութիւն մը։

— Նաև այս անսովոր երեւոյթ մը չէ։ Օրինակ. "Նեստորիոսի Նալ.ի վասն հարցման Աղեքսանդրու վասն կիւրակէի," տակաւին անտիպ (Մատթ. Հայոց Մխիթարեանց Վիեննա.) ճառին մէջ, որ յունարէնէ (— տես զայս Card. Mai, Spicil. Rom. IX. իսկ գերմ. թարգմանութիւնը եւ քննութիւնը ի Դ. Ցանէ՝ „Zeitschrift für kirchliche Wissenschaft und kirchliches Leben", 1884, Heft X, էջ 516, որ եւ ճառին գրութեան տարին կը դնէ իբր 350ին, —) Ն. դարուն թարգմանուած է, միեւնոյն երեւոյթը կ'երեւայ։ Ահաւասիկ յոյն բնագրին եւ այսօրուան հայ թարգմանութեան բնագրին համեմատութիւնը։

| ՅՈՅՆ ԲՆԱԳԻՐՆ | ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹ. |
|---|---|
| Գոհել միգ զուրբ կիրակէն եւ ի բոյն կալ ի գործելոյ այս է պատճառ։ Զօրժամ Տէրն զուրբինակ խորհրդոյն սուրհմունէր՝ առեալ զհացն աւրհնեաց, եբեկ եւ ետ իւրոց աշակերտացն եւ ասէ. Առէք, կերայք, այս է մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բեկանի ի թողութիւն մեղաց։ Նոյնպէս եւ զբաժակն յետ ճաշելոյն եւ օրհնելոյ, ետ եւ ասէ. Այս է արիւն իմ, որ վասն ձեր եւ բազմաց հեղանի ի թողութիւն մեղաց. զայս արարէք առ իմոյ յիշատակի։ | Գոհել միգ զկիրակէն այս է պատճառ։ Զօրժամ մատնէր Տէր մեր, աշակերտացն խորհրդոյն զաւրբինակն ետ. առեալ զհացն աւրհնեաց, եբեկ, ետ եւ ասէ. Այս է մարմին իմ որ վասն ձեր փշրի ի թողութիւն մեղաց. զայս արարէք առ իմոյ յիշատակի։ |

Յայտնի է որ ընդօրինակողը դուրս թողած է խառնելոյ բաժակին յիշատակութիւնը, առանց

## Զ.

## ԱԴԴԷԻ ԵՒ ՄԱՐԻՍԻ ՊԱՏԱՐԱԳ

*Աս պատարագը — զոր որ հին աւանդութիւնը կը համարի թէ Ս. Թադէոս կամ Ադդէ եւ Ս. Մարիս, Ասորւոց առաջին եպիսկոպոսք, յօրինած ըլլան՝ երանելի Առաքելոց պատարագին վրայէն, — կրնայ ենթադրուիլ որ սուրբ Լուսաւորչի յաջորդները Ասորւոցմէ առնլով գործածած են՝ Հայաստանի գոնէ Պարսկային կողմերը։ Ասոր համար պատշաճ կը տեսնենք հոս այն պատարագէն ճաշակ մը տալ։*[1]

*Ը. Մատչի քահանայն մատուցանել պատարագ, եւ երիցս խոնարհի առաջի սեղանոյն՝ զորոյ համբուրէ զմիջավայրն, ապա զաջ եւ զահեակ եղջիւրն, եւ խոնարհի ի բարձրագոյն մասն նորին: Եւ ասէ (սարկաւագն).* **Օրհնեա Տէր։**

*Քահանայն՝*

*Յաղօթս կացէք վասն իմ, հարք եւ եղբարք եւ տեարք, զի տացէ ինձ Աստուած զօրութիւն եւ բաւականութիւն՝ կատարել զխորհուրդս զայս՝ յոր մատեայս, եւ ընկալցի զընծայս զայս ի ձեռաց տկարութեանս իմոյ, վասն իմ, վասն ձեր եւ վասն ամենայն մարմնոյ սրբոյ կաթողիկէ եկեղեցւոյ, շնորհիւ եւ գթութեամբ իւրով յաւիտեանս. Ամէն։*

*Եւ տան պատասխանի.*

*Լուիցէ Քրիստոս աղօթից քոց, եւ հաճեսցի ընդ պատարագն քո, եւ ընկալցի զընծայս քո, պատուեսցէ զքահանայութիւն քո, եւ տացէ մեզ միջնորդութեամբ քով՝ քաւութիւն յանցանաց եւ թողութիւն մեղաց շնորհօք իւրովք եւ գթութեամբ իւրով յաւիտեան։*

---

*միտ դնելու որ Քրիստոսի զոհին մէջ միայն հացի նուիրագործումը դնելով իւր խորհրդաւորութիւնն ինքնին կը մատնէ։* ՀՐՏՐ.

[1] Տե՛ս Daniel, Cod. Lit. IV. 171. (Կը թողունք Գլ. Ա.—Է.)։

— *Ադդէի եւ Մարիսի ընծայուած պատարագը սովորութիւն է այժմ նաեւ "արեւելեան-ասորական" անուանել, վասն զի Նեստորականաց քով ի գործածութեան եղած է եւ է, թէեւ Նեստորականութենէ շատ յառաջ այն արեւելեան գաւառաց մէջ կը գործածուէր, որով նոյն աղանդին հետքէն իսկ ազատ մնացած է, եւ հնագոյն սովորութիւններ պահած։ Ըստ Պիքքէլի (*Pascha, p. *14) Թէոդորոսի եւ Նեստորիոսի անուն կրող պատարագներն ալ պարզ նմանողութիւն են Առաքելական Պատարագին. առաջինը բոլորովին զերծ է Նեստորականութենէ, եւ երկրորդն ալ շատ մեղմ ազդուած, այնպէս որ ի սկզբան այն խռովութեանց ծագած ըլլալու է, երբ դեռ յունախօս հետեւողներ ալ ունէր հռոմէական կայսրութեան մէջ, ինչպէս կը ցուցընէ հոգւոյն Սրբոյ կոչման աղօթից սա յաւելուածը "Փոխարկեալ Հոգւովդ սրբով," որ միայն Կ. Պոլսոյ երկու պատարագաց մէջ կը գտնուի եւ անկէ անցած է հայերէն սովորական պատարագին։ Արեւելեան ասորի ծէսը կը ներկայացընէ նաեւ ասորի պատարագ մը, որ Բրիտանական թանգարանին Զ դարէն ասորի ձեռագրի մը մէջ կը գտնուի եւ զոր Պիքքէլ լատիներէնի թարգմանած է, թէեւ շատ տեղ անկարելի է կարդալ՝ ձեռագիրն եղծած ըլլալով. (*Bickell, Conspectus rei Syrorum literariae. *1871*. p. *71–73.) Այս գիտնականը կը պատրաստէ Արեւելեան-ասորի Պատարագի ամէն ծանօթ նիւթերուն եւ այն պատարագաց աղբերաց քննութիւն մը։ Այն ասորի պատարագին ընդհանուր ձեւն ու պարունակութիւնն, որ Եփրեմայ ժամանակ ի գործածութեան էր, այս հեղինակին գրութիւններէն վերակազմել փորձած է Փրոփսթ իւր նոր գրութեան մէջ։ (*Probst, die Liturgie des vierten Jahrhunderts. § *82*, pp. *309–318.)* ՀՐՏՐ.

*Կնքէ զխորհուրդն, եւ տան պատասխանի՝* Ամէն։
*Յառաջ մատուցանէ քահանայն.* Ի վեր ընծայեցին միտք ձեր։
*Տան պատասխանի.* Առ քեզ են, Աստուած Աբրահամու, Իսահակայ եւ Իսրայէլի, Աստուած փառաւորեալ։
*Քահանայն.* Մատչին ընծայք Աստուծոյ ամենեցուն Տեառն։
*Տան պատասխանի.* Արժան եւ իրաւ։
*Սարկաւագն.* Խաղաղութիւն ընդ ձեզ։

*Արկանէ քահանայն խունկ եւ ասէ զաղօթս զայս:*

Տէր, Տէր, տուր ինձ բացաւ երեսօք կալ առաջի քո, զի համարձակութեամբ որ ի քէն է՝ կատարեսցուք զպատարագս զայս զահաւոր եւ զաստուածեղէն, մտօք յամենայն ամպարշտութենէ եւ ի դառնութենէ սրբովք։ Սերմանեա ի մեզ, Տէր, զսէր, զխաղաղութիւն եւ զմիաբանութիւն ընդ միմեանս եւ առ ամենեսին։

*Եւ յարուցեալ ասէ ի ծածուկ:*

Արժանի է փառաց յամենայն բերանոյ, եւ խոստովանութեան յամենայն լեզուաց, երկրպագութեան եւ բարձրութեան յամենայն արարածոց, անուն երկրպագեալ եւ փառաւորեալ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, որ արար զաշխարհ շնորհօք իւրովք եւ զբնակիչս սորա ողորմութեամբ իւրով. որ փրկեաց զմարդիկ գթութեամբ իւրով, եւ եցոյց շնորհս մեծամեծս առ մահկանացուս։ Զմեծվայելչութիւն քո՝ Տէր Աստուած, օրհնեն, եւ երկիր պագանեն նմա զօրութիւնք հազարք հազարաց վերին (հոգիք) եւ բիւրք բիւրուց հրեշտակաց սրբոց, բանակք հոգեղինաց, սպասաւորք հրեղէնք եւ հոգեղէնք, ընդ սուրբ քերովբէսն եւ ընդ հոգեղէն սերովբէսն զանուն քո՝ սուրբ առնեն եւ օրհնեն, աղաղակեն եւ գովեն եւ անդադար աղաղակեն ընկեր առ ընկեր։

*Ասեն ի ձայն բարձր.*

Սուրբ, սուրբ, սուրբ ես, Տէր Աստուած հզօր։ Լի են երկինք եւ երկիր փառօք Նորա։

*Եւ քահանայն ի ծածուկ:*

Սուրբ, սուրբ, սուրբ ես, Տէր Աստուած հզօր, որոյ փառօք լի են երկինք եւ երկիր, եւ բնութեամբ էութեան դորա, իբրեւ ի պատուոյ ճառագայթից դորա փառաւորեալք. (որպէս եւ գրեալ է,) երկինք եւ երկիր լի են ինեւ, ասէ Տէր կարող։ Սուրբ ես Աստուած Հայր միայն ճշմարտապէս. Սուրբ ես Որդի յաւիտենական՝ որով ամենայն ինչ եղեւ. Սուրբ ես Հոգի սուրբ յաւիտենական՝ որով ամենայն ինչ սուրբ առնի։ Վայ ինձ, վայ ինձ, զի ապշեցայ. քանզի այր պղծաշուրթն եմ ես, եւ ի մէջ պղծաշուրթն ժողովրդեան բնակեալ եմ, եւ զԹագաւոր զՏէր հզօր տեսին աչք իմ։ Իբրեւ

զի ահեղ իմն է այսօր տեղիս այս. (Ծնն. ԻԸ, 17.) ոչ է սա այլ ինչ եթէ ոչ՝ տուն Աստուծոյ եւ դուռն երկնից. զի ակն յանդիման երեւեցար, Տէր։ Եւ այժմիկ ընդ մեզ լիցին շնորհք քո Տէր. սրբեա զաղտեղութիւնս մեր սրբութեամբ սերովբէից եւ հրեշտակապետաց։ Փառք գթութեանց քոց զի զերկրաւորս խառնեցեր ընդ երկնաւորսն, եւ այլն։*

* Այստեղ Նախագիտելեաց վերջն իբրեւ անցումն յօտարաց առ ազգայինն՝ մեր Հեղինակը (բնագիրը) տող մ'ինքնակաց յաւելուած ունէր՝ Թերեւս հարեւանցի նշանակած այսպէս. Ասկէ ետքը կը դառնանք զբաղելու՝ Ճաշոցին ըստ Հայոց — ակնարկութիւն մը Բուզանդարանի սա մասին՝ թէ "Ճանապարհս ըստ Եղէերս Է." (տպ. Վենետ. էջ 252.) միանգամայն միւս եւս նշանակ՝ Հեղինակիս առ նոյն պատմագիրն ունեցած յարմանն ու համարման: ՀՐՏՐ.



Բ.

# ՀԱՅՈՑ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑՔ

## ՉՈՐՐՈՐԴ ԴԱՐՈՒՆ ՎԵՐՋԵՐԸ

---

*Ընդհանրապէս՝ մեր 4րդ դարուն համար խորհրդամատուցի խնդիրը հարկաւ եկեղեցական կրթութեան խնդիր մըն էր։ Ստոյգ է որ՝ ինչպէս Տրդատ, ամէն մերձաւոր ժամանակին տուած զրոյցներուն համեմատ, արեւմտեան կրթութենէ եւ նրբութենէ զուրկ չէ՝ որոնք վրան եկած աստուածպաշտութեամբ ազնուութիւն ընդունած էին անշուշտ. նոյնպէս Գրիգոր՝ Գրիգորններու երկիրը մնած զարգացած՝ բոլորովին արեւմտեան կրթութեան եւ հրահանգի վրայ՝ ազնուագոյն ընելու ան անմշակ երկիրը ձեռնարկած էր իրեններովը։ Իրօք. ինչ ուրիշ նպատակ կամ դաշնաւոր ունէին ասոնք իրենց ի սկզբան՝ բայց ան նուաղ լոյսը զորն որ հոն գտան,[1] եւ արծարծելու կը ջանային գլխաւորաբար յունական ուղղութեամբ։*

*Սակայն այս մեծ գործողութիւնը շատ բաներով յընթացս ընկրկեցաւ։ Կոստանդիանոսի վախճանէն ետքը՝ որդիքը կամ յաջորդները չկրցան Պարսկային պետութիւնը յառաջուան երկիւղէն մէջ բռնել։ Տրդատայ յաջորդները հին կեանքին դարձան կամաց կամաց. բոլոր երկիրը — Տակիտոսի[2] ըսածին պէս՝ բարուք եւ վարուք աւելի յԱրեւելս հակեալ երկիրը — երթալով Արեւմուտքին թիկունք դարձուց։ Ս. Ներսէս իրեն այնպէս գտաւ՝ որ եկեղեցական հրահանգն երկուքի բաժնէ, ի յոյն եւ յասորի դպրութիւն։ Բայց բերում, դիւրութիւն եւ արտաքին խափանումն՝ անանկ ըրին որ կը զօրանար վերջին տարրը։*

*Կը տեսնենք զԱրիստակէս ի Նիկիա 325ին առ Գրիգորիւ, եւ զՆերսէս ընդ սրբոյն Բարսղի առ Դամասոս Հայրապետ գրելով. բայց բազմութիւն հայ պատանեաց կը յաճախէ նաեւ յԵդեսիա (յՈւռհա) ի քրիստոնէական ուսումն, ուստի շատ Հայոց գաւառներ կ'ունենան իրենց ժառանգաւորները։ Պատմութիւնը բաւական կը ցուցնէ՝ որ երթալով կ'ամփոփուէին յունական կրթութիւն, հրահանգք եւ գիրք, մինչեւ այլեւ իսկ զասոնք[3]։ Ուրիշ ինչ կը մնար Հայ կղերին*

---

[1] Բիւզանդ. Գ. էջ 33. «Ոչ եթէ որպէս պարտն էր գիտութեամբ, յուսով կամ հաւատով, բայց միայն սակաւ ինչ որք զհանգամանս գիտէին հելլէն կամ ասորի դպրութեանց, որք էին հասու ինչ այնմ փոքր ի շատէ։»

[2] Տակիտ. Տարեգիրք. Բ. ծզ։

[3] Մեզի շատ հաճոյական Ցեշտաակարան

անկէ ետքը՝ բայց եթէ որ երթալով զօրանայ կամ տարածուի անոնց մէջ ասորի ուսում եւ ինչ որ ասոր յարակից է: Զորօրինակ. Ասորւոց պաշտօնական սովորութիւնք, անոնց պատարագամատոյցաց գործածութիւնք, հիմնական վարդապետութեանց անոնցմէ լուսաւորութիւնք: Իրենց դպրականութիւնը Պետրոսի առաքելութեան, Հռոմայ եկեղեցւոյն եւ քահանայապետաց մեծ յարգ կը ցուցնէր:

Ուստի տարակոյս չկայ եւ ոչ մի՝ որ ան ատեններէն գլխաւորաբար Հայ անխտիր ընդունելի եղած է Հայոց, ան ասորական եկեղեցւոյ սկզբնական ազնուական սովորութիւնը՝ զոր որ դեռ Ասորւոց մէկ մասը (Մարոնիտք) կը պահեն: Գործածած են Հայոց քահանայք անոնց խորհրդամատոյցները. ասոր ո՞վ կը տարակուսի: Ամենէն հին բանուածը գիտնոց մէջ՝ է Պարսկազգ Աֆրահատէսը, այս ինքն Ադդէի եւ Մարիսի, իրենց առաջին եպիսկոպոսաց, (որուն ճաշակը վերը՝ էջ 70 եւն, տեսանք:) 4րդ դարուն կէսերը մեծ պայծառութիւն առաւ Եդեսիայ դպրոցը. Նաեւ Յունաց մէջ համբաւը կը հնչէր: Ափրատէս Իմաստուն կամ Զգօն ըսուած,[1] Եփրեմ եւ ասոր աշակերտը Զենոբ[2] կը ծաղկէին հետզհետէ, որոնց գրուածները — նաեւ վերջնոյն — մասնաւոր առաքմամբ 5րդ դարուն թարգմանուեցան հայերէն:

մըն է առ մեր՝ ռեպհական գրութենէ զուրկ դարուն՝ յունականը նախապաշար ընող մասէն առ հետեւեալը, այնչափ մտադրութեան արժանի որչափ միակ: Ասոր համար շնորհակալութիւն պարտական ենք Շահխաթունեանի. (Ստորագր. եօթն գաւառաց Արարատայ Ա. էջ 18:) Նմանները այս դարէն փնտռել կը յանձնէինք:

— Պատկերս դրինք ըստ Նորագոյն հրատա-




րակութեան մասնագէտ ուսուցչապետին՝ Յ. Ստռժիգովսկի (Էջմիածնի աւետարանը, Վիեննա 1892, էջ 7:) ՀՐՏՐ.

[1] Հեղինակ գրոյն՝ որ առ մեզ Զգօն կոչուած է, եւ՝ անշուշտ ասքերը՝ մերիններէն Յակոբայ Մծբնայ եպիսկոպոսի ընծայուած:

— Ասորականը հրատարակեց Ռայթ. (W. Wright, The homilies of Aphraates. London 1869.) Նոյնը մեզմէ քիչ ժամանակ յառաջ լոյս տեսաւ կրկին ի Փարիզ՝ Ասորի Հայոց գրութեանց նոր ձեռնարկեալ մեծագործ հրատարակութեան մէջ Մինէի գործը լրացնելու համար. (Cursus patrologiae syriacae. ed. Graffin. I. Paris 1892.) ՀՐՏ.

[2] Ու՛ ան Զենոբ՝ որ իր համանուն գրովը հայ կարկառանք մըն է 7րդ դարուն, նոյն գա-

Թէպէտ ի սկզբան ուրիշ եղած կ'երեւայ՝ 4րդ դարուն համար գիտուածը, սակայն քիչ չօգտեցաւ աս առանց դպրութեան գտնուող ազգը դրացի Եդեսիայ դպրոցէն։

Աստ լուրջ վարդապետութիւնները շատերն ամէն ատեն զարմացուցած են. օրինակի աղագաւ՝ — երբ որ "Հոգին ի վերայ ջուրց" կ'առնուր աս դպրոցը (առ Եփրեմի) ոչ հովի, ինչպէս ոմանք ի Յունաց կ'իմանային, այլ Հոգին սուրբ Աստուծոյ՝ որ արարչութեան վրայ "Գըգըայր" զորն որ չի յագիր սուրբ Բարսեղ գովելէ, — եւ կամ երբ որ մարդկային հոգին (դարձեալ առ Եփրեմի) կը տեսնենք որոշ սորվեցուած՝ արդիւնք մը ստեղծմամբ ամէն անգամ եւ ոչ ծննդեամբ կամ ածանցմամբ, (Creationismus եւ ոչ Generationismus,) — եւ ուրիշ շատ այսպիսի առողջ եւ լուրջ գաղափարներ զարմացուցած են զմեզ։

Բայց մենք ի մասնաւորի վարդապետութեան լուսաւորութիւն անուանելով՝ ակնարկել ուզած ենք դպրոցին սա կանուխ պայծառութիւնը՝ մեծ ճշմարտութեան մը համար, այս ինքն որ Հոգին սուրբ է ի Հօրէ եւ յՈրդւոյ, յէութենէ Հօր եւ Որդւոյ։ Ի՞նչ լուսաւոր գաղափար մեր երեքանձնական Աստուծոյն վրայ։

Երկայն ատեն անհաւատալի երեւցաւ ասիկայ, մինչեւ որ ամէնքը համոզուեցան թէ իրօք աս ասանկ է։ Լեցուն են Ասորւոց գիրքերը ասով. եւ վաւեր է եւ ոչ եկամուտ՝ որ բացայայտ իրենց Սահակայ եպիսկոպոսին՝ որ 5րդ դարուն նոյն դպրոցին աշակերտներէն էր, ի ժողովոյ տուած Հանգանակը նոյնը նոյնպէս ունի։

Մենք ալ, երբեմն աշակերտակիցք, ունեցանք նոյն բախտն անոնց հետ նաեւ հիմայ։ Մեր ատեններն էր որ Palmer, անգղիացի, համալսարանի վարպետներէն, ան ատեն դեռ բողոքական, պտըտելով տարիներ՝ Յունաստան եւ Ռուսաստան, սիրահարած յունական ջախջախ ըմբռնմանց, Հ. Աւետիքեանի "Հոգւոյն սրբոյ բխման" համար Հայոց երկայն դարերով ունեցած վարդապետութեան ճառը կարդալով[1] կը սարսափէր թէ աս ճշգրիտ նոյն եւ նման է հռոմէական վարդապետութեան. եւ թէ չկա՞յ արդեօք ասոր ապացուցութիւնը։ Վստահացընել պէտք է զինքը. 100 տարւոյ մօտ է Աւետիքեանին գրածը, այսօր շատ բանով նոյնը կրնանք աւելի հաստատել։ Շատ դարերով յառաջ քան զՓոտ կարծես նախասահմանուած են Հայք առ այս մեծ վկայութիւն. ո՞վ կրնայ այսօր զասիկայ ուրանալ։

Մեզի վարդապետական ճառեր եւ գիրքեր չտուաւ 4րդ դարը, բայց տուածն աս նկատմամբ անգին է, եւ ժամանակները չեն մաշեցըներ։ Մեր աս ժամանակի Հայք են՝ որոնք անանկ դրած են մեր բերանն աս փառաւոր խոստովանութիւնն, որ լեզունիս մեզմէ չելած՝ դժուար է կորսնցընել։

Ան երկրպագելի անունը՝ որուն յունարէն կ'ըսուի Τριάς[2] եւ բոլոր Արեւմուտք կ'անուանէ Trinitas.[3] ասոնց մէջ թէ մէկը թէ՛ միւսն ուրիշ բան չի բացատրեր՝ բայց երեքութիւն մը կամ երից միութիւն մը։ Ոչ այսպէս մերինը՝ զորն որ 4րդ դարէն՝ Երրորդութիւն ըսելու սորված ենք. նախընթացով գոհ չեն

րուն Սեբէոսի գլուխը գտնուած "Ագաթանգեղոսի" գրուածքին պէս։

— Ջենոքայ զրութիւնք, զոր Եփրեմ իւր Կտակին մէջ եւ Եբեդյեսու իւր Ցուցակին մէջ (Ass. I, 168—169.) կը յիշեն, ասորի բնագրաւ դեռ երեւան ելած չեն. հայերէն ձեռագրաց մէջ կը գտնուին քանի մը ճառեր իւր անուամբ: ՀՐՏ.

[1] P.G. Avedikian. Della Proc. etc. Ven. 1824.

[2] Նախ ի Թէոփիլոսէ Անտիոքացւոյ գործածուած՝ 2րդ դարուն։

[3] Նախ ի Տերտուղիանոսէ գործածուած 3րդ դարուն։

եղած մեր Հարք նիկիական հաւատքն արտաբերելու, այլ ուզած են կատարելագոյն մը հնարել իրենց լուսաւոր գաղափարին եւ նիւթութեան համեմատ, — Երրորդութիւն. — ուր չէ թէ մինակ երեք անձինք մի էութիւն կը բացատրուի, հապա միանգամայն ան երեքին ներքին շարժումը, կարգը, դասաւորութիւնը։ Ոչ թէ մինակ երեք՝ այլ նաեւ առաջին մը, երկրորդ մը, եւ երրորդ մը՝ որոնք մէկ էակի մը կը գումարին։ Փոխեան մը յաւիտեան չի կրնար ընել աս երկրպագելի անունը՝ Երրորդութիւն, որն որ ուրիշ բան չի խոստովանիր՝ բայց Առաջին, Երկրորդ եւ դարձեալ Երկրորդ. ուստի առ առաւելն պիտ'որ կարենայ ընել Երկրորդութիւն եւ ոչ աւելի։

Երրորդութեամբ՝ բացատրած են մեր Հարք զՀոգին իբրեւ Երրորդ՝ որն որ առանց Երկու Առաջիններու չի մտածուիր։ Բայց աս Երրեակը յայտնի է, ոչ թէ մէկը մէկալէն առանձին կամ հեռաւոր եւ մերձաւոր է աս Երրորդին նկատմամբ, այլ Երրեակը իբրեւ Ձ, երկու անձ եւ մի միայն էութիւն՝ սկիզբ կամ պատճառ են Հոգւոյն. վասն զի Երրորդութիւն անունը, ինչպէս ըսինք, կը պարունակէ յինքեան նախ Երկրորդութիւն մը յառաջ քան զԵրրորդութիւն ան յաւիտենական եւ անժամանակ կարգին մէջ, այս ինքն Հայր եւ Որդի մի էութիւն՝ մի Աստուած, եւ ետքը կ'ըլլայ Հոգւով սրբով Երրորդութիւն։ Կամ — վասն զի ոչ ըստ ձայնին եւ ոչ ըստ նշանակութեանն՝ կրնայ մտածուիլ եւ անուանուիլ Երրորդութիւն՝ բայց եթէ Երկու անձինք ի միում էութեան, այս ինքն Հայր եւ Որդի մի միայն Աստուած։ Այսպիսի Երկրորդութիւն մը կը յառաջանայ յաւիտենական շարժմամբ եւ գործողութեամբ յԵրրորդութիւն։ "Հայր յանձնէ, Որդի ի Հօրէ, Հոգին սուրբ ի նոցունց եւ ի նոսին։„ [1]

Ծառերէ եւ գրքերէ աւելի է մեզի աս սրբազան անուան ժառանգութիւնը, ուր ամէն անմիտ առարկութիւն կը ճխլուի։ Չենք կրնար բաւական զարմանալ թէ որչափ կանուխ ըմբռներ են մեր Հարք բոլոր նիկիական հաւատքը։

Այսպէս եղած է որ Հայք ալ, ինչպէս իրենց դրացիներն ատենօք, աս երկու բանով, — բաղարջ հացով ի Խորհրդեան, եւ Հոգւոյն սրբոյ միանգամայն յՈրդւոյ յաւիտենականաբար բխած ըլլալուն վարդապետութեամբ — ուզեն չուզեն՝ նախախնամական վկայ անարատ պահուած են Արեւելք եւ բոլոր աշխարհք՝ Փոտեան աղանդոյն գլխաւոր յանդգնած կէտերուն հակառակ, ի կողմն կաթողիկէ հռոմէական վարդապետութեան՝ սրբոյ Փլորենտեան Սիւնհոդոսին հետ։

Թէպէտ ատենք աստնկ էին, բայց շատ յոգնած էր Հայաստան քաղաքականապէս եւ եկեղեցականապէս։ Որչափ անբացատրելի էր ի սկզբան 5[րդ] դարուն Հայաստանի իրաց վիճակը։ Լրացած էր՝ վերը ակնարկուած յարաբերութեանց հետեւութեամբք՝ բոլոր երկրին բաժանումը, ինչպէս դարուն պատմագիրը կ'ըսէ, կարծես յերկու ծուէնս պատառելով, մեծագոյնը Պարսկայնոյն, փոքրը Յունականին ինկած։ Հոն Արշակունի թագաւորի մը ստուեր, հոս կայսերական կոմսեր, եւ մաս մը եպիսկոպոսաց անոնց հրամանին տակ՝ Սուրբն Հայք։ Աստին ալ ասորական տարրը զօրացած արտաքուստ եւ ներքուստ. այնչափ որ շնորհիւ պարսկային իշխանութեան կու գայ եւ կ'երթայ կաթողիկոս ասորի, օրինաւոր կաթողիկոսը մնացած է անոր հրամանին տակ։ Աղեքը ժողովրդեան քիչ հաղորդական՝ քարոզութեամբ եւ պաշտամանքք, եւ ժողովուրդն առանց միջոցաց կրթութեան։[2]

---

[1] Ագաթանգ. 1862. էջ 191 եւ 266։ | [2] "Տրտմէր — կ'ըսէ նոյն դարուն մարդը՝

Բարեբախտաբար աս Բաբիլոնին մէջ կայ մարդ մը, որ ամենայն հանգամանօք կազմեալ յարդարեալ է աս բաներուն՝ որչափ իրեն ձեռքն է՝ դարման մ'ընելու։ Երջանիկ գաղափար մը ծնանելով, քայքայեալ յօդուածներն իրարու բերելու շատ բնական, անոնց հոգի, ջիղ եւ շարժում տալով. — սեպհական դպրութիւն մը։

Մանաւանդ եկեղեցական կրթութիւնը կեդրոնացընելու գլխաւոր դիտում մըն էր զԵդեսիա ի Վաղարշապատ բերել։ Սահակայ զօրաւոր բազուկ մը, հոգելից հոգեկիր Մաշտոց, եւ Վռամշապուհ իր թագաւորական գանձովն առընթեր գտնուելով, զարմանալի ժրութեամբ եւ արագութեամբ մեծ վերանորոգութեան գաղափարը յաջողեցաւ։

Չէր կրնար անծանօթ ըլլալ Սահակայ, որն որ այն տարիները դուրսն ի հրահանգս էր, թէ գլխաւորաբար 4րդ դարէն ետքն ան ատենները՝ ինչ եղած է յոյն աշխարհի մէջ եկեղեցական մատենագրութիւնը։ Շատ արագութեամբ հոն ծովացընելու աշխատուեցաւ ոչ միայն Արեւելից՝ այլ եւ Արեւմտից գիտութիւնը։ Կը զարմանայ մարդ, ինչպէս համեմատութեամբ քիչ ատենուան մէջ այնչափ մթերք ժողվեցան երկիր մը՝ ուր քիչ մ'առաջ գիր չկար։[1] Մենք ասոնց վերջը, թէպէտ շատ բան ցրուած կորսուած, դեռ չենք կրցած բերել։

Ոչ առանց յատակագծի մը՝ աշխատութեան ձեռնարկուած է։

Գրականք, (Biblica.) — Մեծայաղթ են Գրական աշխատութիւնները, որոնց մասնաւոր կերպով ստիպուած էին։[2] Ս. Սահակ առ այս ծնած կ'երեւայ[3], գործ մը՝ որուն կատարեալ քննութիւնները դեռ չեն եղած։

Պատմականք, (Historica.) — Եւսեբեայ կրկին գործքերը. Քրոնիկոն (որմէ հիմայ աշխարհք կը վայելէ՝ Յունաստան նոյնը գրեթէ կորսնցուցած ըլլալով,) եւ Եկեղեցական պատմութիւն, որն որ չի գիտցուիր՝ ինչու Մեսրոպայ

---

Ղազար Փարպեցի. (Պատմ. Վենետ. 1873 էջ 35.) տրտմէր երանելի այրն Մաշտոց տեսանելով զմեծաջան ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս՝ որք բազում թօշակօք եւ հեռագնաց ճանապարհօք եւ բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան։ Քանզի պաշտօն եկեղեցւոյ եւ կարդացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին ի վանորայս եւ յեկեղեցիս հայաստան ժողովրդոցս, յորմէ ոչինչ էին կարող լսել եւ օգտել ժողովուրդքն այնպիսի մեծ աշխարհի՝ յանլրութենէ լեզուին ասորւոյ։

Էջ 44. "Ասորի մեծաջան եւ անօգուտ ուսմամբքն աշխատեալք յախորդ, յորոց բազմութիւնք ժողովրդոց ունայնք եւ թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցւոյն. Եւ ուսուցիչք հանելով յազգս եւ հառաչելով զընդունայն զանօգուտ ջանն իւրեանց, յորում ոչ զոք յուսացուցանէր ժողովելոցն տեսանէին օգտեալս ի վարդապետութենէ հոգեւոր խրատուցն։"

Մ. Խորեն Գիրք Գ. ԿԷ։ "Եւ ի վարդապետել երանելւոյն Մեսրոպայ՝ ոչ փոքր կրէր վաստակս. քանզի ինքն էր ընթերցող եւ թարգմանիչ. եւ եթէ այլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր, զանխուլ ի ժողովրդոցն լինէր. յաղագս ոչ լինելոյ թարգմանչի։ Վասն որոյ եդ ի միտ հնարել գտանել նշանագիրս Հայոց լեզուիս, եւ արկեալ զանձն ի ջանս," եւ այլն։

[1] Կ'ըսէ դարձեալ Փարպեցի, (էջ 42—43.) "Ամենայն անձն յորդորեալ փափաքէր յուսումն հայերէն գիտութեան, որպէս ի խաւարէ՝ յասորի տանջանացն՝ զերծեալք ի լոյս, խնդային։"

[2] Փարպեցի. (էջ 43.) "Բայց տարակուսեալք կային յանկատարութենէ Գրոց սրբոց. քանզի ոչ գոյին դեռ եւս հայերէն լեզուութեամբ սուրբ կտակարանք եկեղեցւոյ։"

[3] Փարպեցի (էջ 32.) "Ցարեալ ի գլուխ սուրբ Հայրապետին Հայոց Սահակայ զգործ մեծ հոգեւոր վաստակոյն, կարգեցան վաղվաղակի յայնմ հետէ հօտքն ուսմանց, բազմացան դասք դպրաց՝ ելեւելս առնելով զփափագմամբք. զարդարեցան պաշտամունք եկեղեցւոյ. յորդորեցան բազմութիւնք արանց եւ կանանց ժողովրդոց ի տօնս Փրկչին եւ ի ժողովս մարտիրոսաց. որ շահեալք լի հոգեւոր օգտիւ, ընթանային խնդալիցք ի հաղորդմանէ մեծի խորհրդոյն, արձակեալք իւ-

հրամանաւ[1] ասորերէնէն կը թարգմանուի, յունարէն առձեռն գտնուելով. — (նոյն ասորին ալ հիմայ երեւան ելած է,*) — գուցէ ասորին արիոսեան բծէ սրբուած գտնելով:

*Կանոնականք*, (Canonica.)—յունական հին հաւաքում մը. մէկ առաջին թարգմանութիւն մը՝ շատ զգուշութեամբ եղած, —վասն զի քիչ մը ետքը երկրորդ մ'ալ կ'ըլլայ:

*Հայրաբանականք*, (Patristica.) — ասորականք եւ յունականք:

*Մեկնականք*, (Hermeneutica.) —կամ սուրբ Գրոց Մեկնութիւններու հոյլ մը:

*Վկայաբանականք*՝, (Martyrologica.)

Վերջապէս Եկեղեցական դպրոց մը՝ Ընծայարան (Séminaire) մը հիմնելու մեծ գաղափարով:[2] Չէին կրնար մոռնալ՝

*Ծիսականները*, (Liturgica,) — որոնց հետքը կամ կտորներն ան ատենէն ունինք ետքի յեղափոխութեան մէջ:

Բայց ոչ միայն ծիսարան մը, հապա նաեւ *Տոնիրագործականի* (Liturgique*ի*) նկատմամբ ժիր եղան՝ որն որ մեր առաջիկայ նիւթն է:

Ի՞նչ եղաւ աս նկատմամբ. վասն զի շատ բաներ կրնային: Կրնային անմիջապէս ասորականներէն մէկը՝ Նոր դպրութեամբ հայերէն ընել: Նոր դպրութեամբ նոր պատարագ մը կրնար մեզի հայերէն գրուիլ: Բայց աս ճաշակի չէին մեր Հայք. իրենց աւելի սիրելի էր Եկեղեցւոյ մէջ ընդունուածն ու գործածուածը:

Չէին անշուշտ անծանօթ՝ դրացի յունական կողմն եղած պատարագաց փոփոխմունքն եւ իմաստաւորի՝ մօտեւ հեռու՝ սրբոյն Բարսղինը մուտք գտնելը: Եթէ 5րդ դարու առաջին տասնամեակներուն հայ Հեղինակի մը[3] անսանք, նաեւ Հայաստանի մէջ, գոնէ Յունաց մերձաւոր տեղեր՝ զոր օրինակ Մամբրէ, կը գործածուէր 4րդ դարուն վերջերը. Թէպէտ, ինչպէս պիտ'որ տեսնենք քիչ մը ետքը, նոյն Հեղինակը ուրիշ կերպով աղօթքներէն կտորներ յառաջ չի բերեր՝ բայց եթէ 406էն՝ դպրութեան գիւտին Թուականէն ետքը եղած հայերէն Թարգմանութենէն՝ զորն որ հիմայ յառաջ կը բերենք առաջիկայ աղբիւրներէս:

---

բաքանչիւր ի տունս մեծամեծս եւ տղայք սաղմոսելով եւ կցորդս առնելով ընդ ամենայն տեղիս, ի հրապարակս եւ ի փողոցս եւ տաւոնին. պայծառացան եկեղեցիք, շուք առին վկայարանք սրբոց. միշտ ծաղկելով ի նոյն ուխտ կտակարանաց ընծայիւք: Հանապազաբուխ հոսէին վտակք յաւաղացն մեկնութեանց:»

[1] Խոր. Բ, Ժ:

[2] Աս ծննդական գաղափարը՝ որն որ հոգի մը տուած էր՝ բոլոր Հայոց կղերականութեան մղում մը տալով. մինչեւ դարուն վերջերը ծերացաւ:

[3] Փ. Բիւզ. տես վարը:

* Բայց հատակոտորք միայն հրատարակուած են, այսինքն՝ Ա, ա—ե. (Krehl, Eus. opp. recognovit Dindorf, IV, 18—56), Ա. ժգ (Cureton, Documents etc. p. 1—5), Ա, գ, ժգ, ժէ, իե. (Lagarde, Praetermissa, 249—52.) Ամբողջական հրատարակութիւն մը՝ հայոյն հետ համեմատուած, անհրաժեշտ է: ՀՐՏՐ.



Գ.

# ՀԱՅՈՑ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑԸ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒՆ ՍԿԻԶԲԸ

---

## ԲԱՐՍԵՂԵԱՆ ՄԻԱԿ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑ

### 1.

*Հայ-Բարսեղեան պատարագին Օրինակները:*

[* Հայոց Հնագոյն պատարագները կը գտնենք երկու ձեռագրաց մէջ մէկը՝ Լիոն, եւ միւսը՝ Մոնաքոն, երկուքն ալ ընտիր Հաւաքածոյ ձեռագիր այլեւայլ պատարագաց: Որովհետեւ յաջորդ մասանց մէջ այս երկու ձեռագիրք միշտ պիտի յիշուին, հարկ է ակնարկ մ'արձակել ասոնց պարունակածներուն վրայ:

Ա. Ըսինք** որ Փարիզի Ազգային Մատենադարանին մէկ ձեռագիրը մեր պատարագաց հաւաքում մըն է. (Supplément Arm. Nr. 50.) սակայն Ցիւլորիէի ձեռօք 1858ին հոգացուած ընդօրինակութիւն մըն է՝ Լիոնի Մատենադարանին թիւ 15 ձեռագրէն,*** ուստի վերջինս պէտք է աչքէ անցընել: Լիոնի մատեանը 212 թղթէ կը բաղկանայ, կոնակը գրուած է Missale Armenium եւ երկու բառերու միջոցը՝ „circa 1400": Պատենին ներսի կողմը ոսկեթել կտաւ մը պատած է. երկու թուղթ գրքին սկիզբը եւ երկու թուղթ գրքին վերջը՝ մագաղաթ Եղիշէի Վարդանանց պատերազմէն հատուած:**** Գիրքը բամբակէ հին թղթի վրայ բոլորգիր գրուած է. առաջին երեսը կը սկսի 9 տող յունարէն շատ վարժ եւ մաքուր գրուած խօսք մը, որուն առաջին կարմրագիր տողը ջնջուածի պէս է. երկրորդը կը սկսի ώσπερ γενοῦ σου υἱοῦ μεθ' οὗ εὐλογητός եւն: Անկէ ետքը գրուած է սա խօսքը. "Հոգին սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ ոչ արարեալ, ոչ ստեղծեալ, ոչ ծնեալ, այլ ըխեալ:„ Ձախ կողման երեսը մագաղաթի վրայ

---

* Երկու փակագիծներու մէջ առնուած մանրագիր հատածները հրատարակչին կողմէն յաւելուած են, որ անհրաժեշտ են յաջորդ քննութեանց լուսաւորութեանն համար: Լիոնի ձեռագրին նկարագրութիւնը քաղուած է հեղինակին թղթիկներէն՝ շատ տեղ բառ առ բառ յառաջ բերելով իւր դիտողութիւնքը: ՀՐՏՐ.

** Տես վերը՝ էջ 7:

*** Ինչպէս կը ցուցընէ արդէն մատենին ճակատը գրուած սա վերնագիրը՝ „Liturgies Arméniennes, d'après un manuscrit arménien, (Nr. 15) de la Bibliothèque de Lyon. R. C 5188.„

**** Այս հատակոտորները հրատարակուեցան Հանդիսի մէջ (1893, Թիւ 5, էջ 129—133) հայազէտ Կ. Կոնիբիրի խնամովք:

գրուած է. "Շատ մարդ կայ ի քահանայն որ զպատարագն սուտ կու այնէ, զքարոզանին կու ասէ ու զաղօթնին ի տեղն կու թողու, զաստուած կու խաբէ ու զմարդ:„

Բուն մատեանը կը սկսի երկրորդ երեսէն, եւ հետեւեալ կտորները կը բովանդակէ: (Սուտ անուններն յետոյ մի առ մի պիտի ուղղենք:)

1. "Պատարագամատոյց: Աստուծով զոր արարեալ է սրբոյ հօրն մերոյ Աթանասիոսի Պատրիարքին Աղեքսանդրու: Յորժամ կամեսցի քահանայն զպատարագ մատնել, պարտ է այսպէս խորհրդաբար զգեստաւորել.... Որ զգեցեալդ ես զլոյս որպէս հանդերձ....:„ Պատարագէն վերջը սա տողերը կը կարդանք. "Ողորմելի գերիս Նիկողայոս յերեսս անկեալ աղաչեմ զձեզ յիշեսջիք XC ըզմեզ ի սուրբ եւ ի մաքրափայլ աղօթս ձեր եւ զծնօղսն մեր եւ Աստուած զձեզ:„

2. (Թղ. 28b) "Պատարագ աստուծով հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին. ասի սրբոյն Աթանասիու սկիզբն: Տէր Աստուած արարիչ մեր որ արարեր....:„

3. (Թղ. 39) "Աստուածային պատարագ ասացեալ սրբոյ հօրն մերոյ Բարսղի եպիսկոպոսապետին Կեսարու: Ամենայն որ ինչ զգեստաւորելոյն է խորհրդածութիւն գրեալ է յառաջինսն բաւականապէս:... Տէր Աստուած մեր որ զենար գառն անբիծ յաղագս աշխարհի կենաց...:„ Պատարագին վերջը (Թղ. 64) կը կարդանք. "Բարեխօսութեամբ սուրբ հօրս մերոյ Բարսղի ողորմեա Քրիստոս Աստուած գրողի սորա Նիկ. եւ ծնողացն մերոց ամէն:„

4. (Թղ. 65) "Աստուածային պատարագ սուրբ քառասնորդացն Պրո-կղիանոսի, արարեալ սուրբ հօրն մերոյ Վասիլի: Զգենու քահանայն եւ երթայ յառաջադրութեամբ ի սեղանն...: Տէր Աստուած մեր որ ցուցեր մեզ զմեծ փրկութեան խորհուրդս...:„

5. (Թղ. 77) "Աստուածային Պատարագ ասացեալ սուրբ հօրն մերոյ Գրիգորի Աստուածաբանի.„ եւն:

6. (Թղ. 84) "Պատարագամատոյց աստուծով զոր արարեալ է սրբոյ հօրն մերոյ Յոհաննու ոսկեբերանոյն կոստանդինուպաւլսի պատրիարքին: Նախ ասի սաղմոսն Դատ արա ինձ Տէր...:„ Աւետարանի մասին մէջ, ուր սա խորագիրը կայ՝ "Եւ ընթեռնուն զաւետարանն եւ ի յաւարտելն սկսանին զՀաւատամքն ժողովուրդն որպէս եւ գրեալ է ի պատարագն.„ ստորին լուսանցքին մէջ գրուած է՝ նոյն գրով կարմրագիր՝ այսպէս. "Թուղթ մի շրջէ եւ քարոզէ զի խալատ է հաւատամքն գրած,„ այսինքն՝ Թող տուր Հաւատամքը, հոս մի՛ ըսեր, տեղը չէ: Հաւատամքն ալ աւելի Կ.Պոլսոյ հանգանակն է, փոքր ինչ խառնեալ մերինին: Հաւատամքը լմնալէն ետքը՝ լուսանցքին մէջ ծանուցածը նորէն ընդարձակ կը ծանուցանէ այսպէս. "Սարկաւագն յաւարտել աւետարանին սկսանի քարոզել որպէս եւ գրեալ ի սուրբ Բարսղի պատարագն. եւ յորժամ յառաջադրի խորհուրդն ի սուրբ սեղանն եւ կատարի ամենայն խորհրդածութիւնքն, նա յապա՛ ասի հաւատամքն ի յիւրում տեղւոջն:„ Պատարագին վերջը (Թղ. 105a) կը կարդանք.„ Բարեխօսութեամբ տիեզերաքարոզ հօրս մերոյ սրբոյն Յոհաննու ոսկիբերանին ողորմեա Քրիստոս Աստուած ամենայն հաւատացելոց եւ գրողի սորա եւ ծնողացն իմոց եւ ամենայն եղբարց անապատիս ամէն:„

7. (Թղ. 105b) "Աստուածային պատարագ սրբոյն Սահակայ„ ևն։ Գրողին յիշատակարանը չկայ, վասն զի վերջին էջին վրայ (Թղ. 118b) տեղ չէ մնացած։

8. (Թղ. 119a) "Աստուածային Պատարագ սրբոյն Կիւրղի„ ևն։ Վերջը (Թղ. 128b) գրողին յիշատակարանին տեղ չէ մնացած։

9. (Թղ. 129a) "Պատարագ սրբոյն Յովսեփայ եղբօր Տեառն„ ևն։ Թղ. 141b կը կարդանք. "Ո՛վ սուրբ քահանայք որք աղօթէք ի սուրբ մատեանս յայս յիշեսջիք զարտասուաց արժանիս զՆիկօղ եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս։„ Ասկէ ետքը կան սա պատարագներն ալ։

10. (Թղ. 141b) "Պատարագ ասացեալ սուրբ հօրն մերոյ Իգնատիոսի աստուածազգեաց հայրապետին Անտիոքայ փոխեալ յառաջոյն ի մերս ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։„ Այս պատարագին մէջ ասորի խորագրի մը հրամայածին համար սա դիտողութիւնը կցուած է. (Թղ. 153.) "Քահանայն աստանօր ոչ արասցէ վայրապար ինչ, քանզի սովորութիւն է Ասորւոցն յայսմ տեղւոջ բեկանել եւ կնքել զսուրբ մարմինն, այլ ո՛չ ամենայն եկեղեցեաց է այս սովորութիւն։ Այլ յորժամ վերացուցանէ զսուրբ հացն ի տես ժողովրդեանն եւ ապա զխորհրդական աղօթանսն ասասցէ եւ բաշխեսցէ զտէրունական մարմինն, որպէս եւ հրամայէ սուրբն Վասիլիոս եւ Ներսէս եւ սուրբն Յոհաննէս։„

11. (Թղ. 157a) "Պատարագամատոյց աստուծով որով կատարի խորհուրդն յամենայն օր զի այս միայն է եւ ոչ գոյ Հռովմայեցւոց (կը պակսի ոյլ) խորհուրդ պատարագի։„ Կ'աւարտի՝ Թղ. 167։

Ասկէ ետքը կու գան Պենտէկոստէի երեք աղօթքներն իբրեւ "Աղօթք Տեառն Յովհաննու ոսկիբերանին ասացեալ ի սուրբ երրորդութիւնն։ Ամենակալ անարատ Աստուած ...։„ Ետքը կան Աւետարանք իւղաբերից, ոստոյն (Թղ. 194), Մեծի Ուրբաթին (Թղ. 195). Մեծի կիւրակէին ոստոյն (Թղ. 204) եւ ասոնցմէ վերջը (Թղ. 208) գրչին գլխաւոր յիշատակարանը, որ կարեւոր կէտեր կը բովանդակէ։

Յիշատակարանն է այսպէս. "Փառք ..։ Աստանօր կամօք եւ խնամօք ամենազօրին Աստուծոյ յանկ ելեալ սուրբ մատեանս պատարագամատուցի, որ ունի ի յինքն բովանդակեալ զաղօթս սուրբ քահանայապետից Աստուծոյ զոր յիւրաքանչիւր ժամանակս արարեալ են խորհուրդ պատարագի։ Արդ եղեւ սա գրեալ ձեռամբ մեղաւոր եւ անարժան քահանայի Նիկողայոսի յիշատակ ինձ եւ ծնողացն իմոց եւ եղբօրն մերոյ Յովհաննիսի քահանայի ի Թուականիս Հայոց ՉԿԳ (= 1314)* ի դղեակս Անարզաբա ընդ հովանեաւ սուրբ մօրս լուսոյ տիրուհոյ եւ միշտ կուսին Մարիամու աստուածածնիս, ի թագաւորութեան Աշոնի եւ ի քահանայապետութեանն Տեառն Կոստանդեայ, եւ ի մերոյ եկեղեցւոյս առաջնորդութեան Տեառնս մերոյ Յովհաննէսի եպիսկոպոսի, որոյ Տէր Աստուած պահեսցէ զսա հանապազ։ Յիշեսջիք աղօթիւք զպասաւորս սրբոյ եկեղեցւոյս եւ զքահանայս սուրբս, զկոստանդին եւ

---

* Թուականիս ներքեւ սա դիտողութիւնը դրած է Յարգ. հեղինակն. "= 2 Յունուարի 1314 -- 1 Յունուարի 1315. — 560 տարւան ձեռագիր է. կզմ. 1875ին.„ այսինքն 1875ին կազմուած է Լիոնի մատեանը նոյն զրատան վարչութեան կողմանէ։ Քովն ալ գրուած է. "Տես առ Տիւլորիէի վասն Օշնի եւ Կոստանդեայ։„ — Յիշատակարան տես նաեւ "Մատենադար. Թրգմ. Նախն.„ էջ 265։

զմիւս կոստանդին, եւ զԱնդրոնիկոս եւ զԲասիլիոս, եւ զմիւս Բասիլիոս եւ զՍտեփաննոս եւ զսարկաւագունս զՎասիլ եւ զԹէոդորոս եւ զՎարդան սեւլեռնցի եւ զՅակոբ եւ զամենայն հաւատացեալս սրբոյ Երրորդութեան որում փառք եւ զօրութիւն այժմ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Յի-շեսջիք ի Քրիստոս եւ զԹորոս երէց որ փոխեցաւ առ Քրիստոս։ Եւ որ յիշէ զմեզ աղօթիւք եւ զնա յիշեսցէ Քրիստոս Աստուած ի յիւր միւսանգամ գալուստն որ է օրհնեալ յաւիտեան։„

Ձեռագրին մէջ Յիշատակարանէս զատ քանի մը մանր բաներ ալ կան գրուած։ Նախ "Աղօթք սրբոյն Յովհաննու ոսկիբերանոյն ի ժամ ճաշակ-մանն.„ — հոս կարմրագիր գրուած Mρ ïc, (այսինքն Մարիամ, Յիսուս) Ոչ եմ արժանի եւ ոչ բաւական որ ընդ յարկաւ մտանես„ եւն. մէկուկէս թուղթ։ Յետոյ աւետարանչաց նկատմամբ տեղեկութիւնք, որ յաճախ կը գտնուին Աւետարանաց սկիզբն, այսինքն "Մատթէոս Թարգման(ի) երգ կենաց։ Մատթէոս գրեաց զաւետարանս իւր յԵրուսաղէմ...։ Մարկոս հրամանաւ Պետրոսի Վիմի գրեաց.... Ղուկաս արուեստիւ բժիշկ գոլով.... Յովհան-նէս հնազանդութիւն... Միանգամայն չորեքեան աւետարանս Գլուխք ՌՃԿԲ. Վկայութիւնք ՀԹ. Տունք ՓՁ։„ — Ասկէ զատ երեքուկէս տող յունարէն հոգեւոր խօսքեր գրուած են՝ կարմրագիր բայց ջնջուած. այս-պիսի ինն տող ալ գրքին վերջին երեսը կայ յունարէն՝ շատ մաքուր գրով։ Վերջապէս գրքին երեք վերջին երեսները կը լեցընեն լատինական Praefatio աղօթից հայերէն թարգմանութիւնք՝ 7 թուով. գործքին ընթացքին մէջ ալ քանի մը հատ կայ։ Յիշեալ 7 աղօթից առաջնոյն վրայ գրուած է "Պահոց.„ երկրորդին վրայ նոյնպէս կարմրագիր՝ "Բրօֆաց յարութեան Քրիստոսի„ եւն։

Բ. Լիոնի ձեռագրին վրայ մանրամասն տեղեկութիւն տալ հարկ էր. վասն զի ձեռագիրս այլուր չէ ցուցակագրուած։ Երկրորդին՝ այսինքն Մոնա-քոնի Արքունի Մատենադարանին (Cod. Arm. VI.) ձեռագրին վրայ երկար խօսիլ աւելորդ է. վասն զի մանրամասն ցուցակագրուած է։* Հոս կը յի-շենք քանի մը կէտ միայն։ Ձեռագիրս որ 1427—1432 տարիները գրուած է մասամբ Մեծոփայ եւ մասամբ Ուրծայ վանաց մէջ՝ Մկրտիչ, Յովհաննէս եւ Զաքարիա վարդապետներէ, ծաղկագրուած Յովհաննէս եւ Աբրահամ վարդապետներէ, Մկրտիչ արքեպիսկոպոսէ եւ Սարգսէ Ձա-գավանեցւոյ, ողորկ եւ ամուր թղթի վրայ կանոնաւոր մանր բոլորգիր գրչութիւն մըն է 314 թղթէ (մեծութիւն 13·4×9 սանդիմեդր. տողք՝ 19։) Մաշտանս թէ ժամագիրք եւ թէ Պատարագամատոյց է՝ ընտրելա-գոյն ընթերցուածներով շատ անգամ քան զԼիոնինը։ Յիշենք համառօտիւ պատարագները։

1. (Թղ. 47a) "Աւրէնք արկանելոյ սպաս եկեղեցւոյ.... (Թղ. 49a) Որ զգեցեալ ես զլոյս որպէս հանդերձ....„ մինչեւ Թղ. 64։ Այս նախ-երգանը՝ ինչպէս դիրքը կը ցուցընէ՝ հոս դրուած է, որ յաջորդ պատա-րագները գործածելու ժամանակ ի միասին կատարուի։ Թղ. 64a կը սկսի "Պատարագամատոյց։ Զոր արարեալ է սրբոյն Աթանասի Աղեքսանդրու

* Տես Հ. Գր. Վ. Գալէմքեարեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց արքունի Մատենադարանին ի Միւնխէն։ Վիեննա 1892. (4° Երես Ը եւ 37։) Համտ. էջ 14 - 21։

*հայրապետի: Տէր Աստուած զօրութեանց եւ արարիչ ամենայն լինելութեանց ..:„*

2. (Թղ. 123a—156b) “*Աւրէնք արկանելոյ սպաս եկեղեցւոյ...: Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ ի Տեառնէ...: Զգեցո ինձ տէր վհանդերձս փրկութեան ..: Տէր Աստուած մեր որոյ կարողութիւնդ անքնին է„ եւն. որ այժմու սովորական պատարագն է մինչեւ գրեթէ “Ողջոյն տուք միմեանց:„ Անկէ ետքը շարունակութիւնը կու գայ սա վերնագրով՝*

3. (Թղ. 158a—161b) “*Պատարագամատոյց զոր արարեալ է սրբոյն Աթանասի Աղեքսանդրու հայրապետին: Տէր Աստուած զօրութեանց եւ արարիչ ամենայն լինելութեանց . . .:„*

4. (Թղ. 183a—213a) “*Պատարագամատոյց աստուծով զոր արարեալ է սրբոյ հաւրն մերոյ Յովհաննու տիեզերաքարոզ վարդապետի եւ Ոսկեբերանի:„*

5. (Թղ. 215a—255b) “*Աստուածային Պատարագ ասացեալ սրբոյ հաւրն մերում Բարսղի եպիսկոպոսապետի Կեսարու . . . . Տէր Աստուած մեր որ զենար . . .:„*

6. (Թղ. 256a--267b) “*Պատարագամատոյց որով կատարի խորհուրդն յամենայն աւուր. զի այս միայն է եւ այլ ոչ գոյ Հռովմայեցւոցն խորհուրդ պատարագի:„*

7. (Թղ. 269a—284b) “*Պատարագամատոյց զոր արարեալ է սրբոյն Գրիգորի Լուսաւորչի: Տէր Աստուած արարիչ մեր . . .:„ — Անկէ ետքը կը յաջորդեն այլեւայլ Աղօթքներ:*

*Բազմաթիւ յիշատակագրութիւնք կան մատենիս մէջ, բայց մանաւորապէս՝ երկու գլխաւոր յիշատակարան, մին Ժամագրոց եւ միւսը Պատարագամատուցի: Առաջինը* (Թղ. 118a—119b) *սա գլխաւոր կէտերը կը բովանդակէ. “Արդ ես Ներսէս սուտանուն կրօնաւորս . . . խնդրեցի յաստուածաբան վարդապետէն... Թովմայէ... եւ ինքն շնորհեաց զքարտէսն եւ ետ գրել ի ձեռն ասուն աշակերտացն Մկրտիչ վարդապետին եւ Յովհաննէսին եւ Զաքարիային... Եւ արդ գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՊՁԱ* (=1432) *ի հրեշտակաբնակ յանապատս եւ ի հրաշափառ ուխտս Մեծոփայ ընդ հովանեաւ սուրբ աստուածածնիս եւ սուրբ Յակոբ հայրապետիս...: Այլ եւ յիշել աղաչեմ զարհեպիսկոպոսն զտէր Մկրտիչ Աբբայ, որ երփն երփն գունով եւ զանազան երանգով զարդարեաց զսուրբ գիրքս...:„*

*Մեզի կարեւորն է Պատարագամատուցին յիշատակարանը՝* (Թղ. 286a—290a) *որ մասամբ ոտանաւոր է* (95 *տող*), *եւ է յիշատակարան Նախագաղափարին Մոնաքոնի օրինակին եւ յետոյ արձակ: Անկարելի ըլլալով ամբողջը յառաջ բերել, կը դնենք հոս այն տողերն, որ յաջորդ քննութեան մէջ կարեւոր վկայութիւն մը պիտի տան Պատարագամատուցաց Հաւաքման հնութեանը: Ոտանաւոր յիշատակարանը կ'ըսէ.*

*“Ի ժամանակս յետին եղեալ*
*Ի Լեւոնի արքայ ածեալ . . . .*
*Ի հայրապետութիւնն լեալ*
*Որ Կոստանդեան օծոցն եղեալ, . . .*
*Ի թուականիս մեր շուրջ առեալ,*

*Հարիւրիւթանց վերստին այլ լեալ։*
*Նա եւ եւթն այլ յաւելեալ,*
*Միակս ի հետ կոյս թիւս եկեալ։**
Գրեցաւ սուրբ տառքս այս շարադրեալ
Որ պատարագէ են միացեալ։
Աշխաց Ընկէց որ Բարեձևեալ
*Ի Հայ բարբառ եւ յոյժ քերթեալ. . .։*
*Չիր պարգեւաց սա* մեզ տուեալ
Ի Նախահարց մեր յորդորեալ.
*Եւ ի յաւանդ մեզ հաստատեալ*
*Աստուածախօս տառքս այս պատուեալ...*
*Ընդ որս մեծ րաբին* Վարդան *կոչ-*
*եալ. . . .*
*Վրաբուն* Սարգիս Շուլն *ձայնեալ*
*Զսա յիշատակ հոգւոյ ստացեալ...։*
*Որպէս զտէրս մեր գրեալ*
*Զ*Սարգիս Շուլն *րաբուն եղեալ...*
*Եւ ընդ ծնողսն իւր ննջեցեալ,*
*Զարմիւքն իւրովք առ տէր գնացեալ...*
*Որոց եւ մեք արժանացեալ,*
*Լիցուք մասին անդ ժառանգեալ.*
*Զ*Թորոս Երէց** *որ զայս գծեալ*
*Չեռամբ իւրով եւ շարագրեալ.*
*Նա եւ զծնաւղսն իմ կարօտեալ,*
*Ցիշման ձերոյ արժանացեալ...*
*Զի մեք յաղաւթս ձեր յիշեալ,****
*Գտից ընդ ձեզ հաղորդ եղեալ„ ևն։*

*Այս յիշատակարանէս ետքը կը կցուի Մոնաքոնի ձեռագրին բուն գրչին յիշատակարանը, որ է այսպէս.* "Փառք*... որ ետ կարողութիւն տկար ոգւոյ եւ տարտամ մարմնոյ* Զաքարիայի *փծուն գրչի հասանել յաւարտումն ..։ Արդ գրեցաւ փրկական սուրբ խորհուրդ եւ մեղսաքաւիչ պատարագիս ընդ հովանեաւ սուրբ աստուածածնիս եւ սուրբ յակոբիս, ի վանս որ կոչի* Ուրծոյ, *առ ոտս վարժապետիս մերոյ Սարգսի . . . ի թվականութեանս Հայոց ՊՀԶ* (= 1427)։ *Արդ յիշեցէք . . . զստացող սորա* զՆերսէս *սրբամիտ եւ կուսակրօն քահանայ, որ բազում փափաքանաւք եւ տենչմամբ սրտիւ* խնդրէր Եղեալ *վարդափթիթ եւ աստուածային պատարագացս,* եկեալ հանդիպեցաւ ի սուրբ ուխտ Աստուծոյ *(ի լուսանցս՝ նոյն գրչէ՝* Անդրէէ Ե-

* *Թուականս է — 1289։ Բայց այս թուականը չէ թէ Մոնաքոնի ձեռագրին ընդօրինակման տարին է (վասն զի վերջինս գրուած է Զաքարիայէն՝ 1427ին յՈւրծա եւ ոչ Կիլիկիա), այլ անոր զաղափարին, որուն գրիչը՝ Թորոս երէց քիչ մ'ետքը կը յիշուի։ Զաքարիա իւր զաղափար-օրինակին ոտանաւոր յիշատակարանն ալ օրինակեր է հոս։*

** *Գրուած է մէջը "Զաքարիա կրաւնաւոր„ եւ լուսանցքին վրայ՝ միայն "ԶԹորոս երէց։„ Զաքարիա յիշատակարանն օրինակելու ատեն իւր անունը դրեր է զաղափար-օրինակին գրչին անուան տեղ։*

*** *Հոս ալ լուսանցքի վրայ գրուած է. "Նաեւ որդեակն իւր հսկող լեալ, Գրիգորիոսն ամենօրհնեալ։„ Ցայտնապէս Զաքարիա կարգէն հաներ է այս տողերն, ինչպէս քիչ յառաջ Թորոսի երիցու անունը։*

Մովսէսի) եւ Գրիգորի շնորհազարդելին իւր մեծ ուրախացաւ։ Եւ բազում աշխատութեամբ ... ետ գրել ի հալալ ընչից իւրոց յիշատակ բարի իւր եւ ծնողաց իւրոց հանգուցելոցն ի Քրիստոս հաւրն Սարգսի եւ մաւրն Շնորհաւորի եւ եղբարցն իւրոց Թումայի եւ Շահանշահի ...։ Յիշեսջիք ... Նաեւ զՍարգիս Զաքարեանցի որ զգլխագիրն գրեաց Նաեւ Պօղոսեանն Վարդան եւ որ զսակաւ յիշատակարանս գրեաց զՅովհաննէս ...։"

Ուրիշ ձեռագրաց վրայ, որոց մէջ այս կամ այն պատարագը կը գտնուի, յետոյ իրենց տեղը կը խօսուի։*]

Ո՞ր պատարագաց ան Հաւաքումն եղած է՝ զորն որ Լուգդունեան մատեանը կը պարունակէ, ո՛վ նոյնն ըրած է, եւ ո՞ւր — պէտք ենք փնտռել. որովհետեւ՝ ինչպէս յիշեալ մատենին յիշատակարանէն յայտնի է,¹ անիկայ արդէն գոյող մատենի մը պարզապէս ընդօրինակութիւնն է։ Նիկողայոս քահանայ կ'օրինակէ միայն, չէ թէ կը ժողվէ։

Նւս աւելի հեռու է Մոնաքոնեան մատենին ընդօրինակողը — Զաքարիա կրօնաւոր, — որն որ 1427ին Ուրծայ վանքը նոյն մատենէն քանի մը պատարագ կ'օրինակէ ի պէտս Ներսիսի կուսակրօն քահանայի՝ սկզբնագիրը ինք Ներսէս քահանայ յՈւխտ Առաքելոցն Անդրէի եւ Մատթէի գտած ըլլալով։

Բայց շատ օգտակար գործ մ'ըրած է մեր ընդօրինակողը Ներսէս, որ սոյն Մոնաքոնի ձեռագրին մէջ իր յիշատակարանէն յառաջ՝ իրեն, ինչպէս կ'երեւայ, իբրեւ գաղափար ունեցած մատենին յիշատակարանը դանդաղած չէ ընդօրինակելու։ Աս յիշատակարանը մեր պատարագաց Հաւաքման հնութիւնը քիչ մ'աւելի վեր կը հանէ, Լեւոնի եւ Կոստանդին Սոյ Կաթողիկոսի անունները տալով։

Մոնաքոնի օրինակը 15րդ դարուն (1427ին) կը գրուի. 14րդ դարուն, այս ինքն 113 տարի առաջ (1314ին) կը գրուի Լուգդունեան օրինակը. իսկ Ներսիսի Աբեղայի գործածած կամ ըսենք Անդրէի եւ Մատթէի Ուխտին օրինակը 1298ին գրուեր է։

Սակայն անիկայ դեռ մատենին սկզբնագիրը չէ. վասն զի աս վերջին թուականութեան "գրողը" կամ "շարադրողը" Թորոս երէց՝ օրինակ մը կ'ենթադրէ՝ որն որ ուրիշ մէկուն կը վերաբերի, այս ինքն Վարդապետի մը Սարգիս Շալվէ անուն, որն որ

"Ընդ ծնողան իւր ննջեցեալ,
Զարմիւքն իւրովք առ Տէր գնացեալ,"

աս պատարագաց Հաւաքումը "յիշատակ հոգւոյ սահացեալ" է եղեր, որն որ անշուշտ առ իւրով կենդանութեամբ գրել տալով եւ գործածելով՝ յետ մահուան ուրիշներուն գործածելովը կատարուած է։ Դժուարաւ կրնանք ըսել թէ նոյն իսկ Սարգիս Րաբուն Շալվէ հաւաքողն եղած ըլլայ. Թորոսի երկու խօսքերը չեն երեւար անիկայ նշանակել։ Որ եւ իցէ դիպուածի մէջ՝ աս թուականներն ունենալէն ետքը, ապահովապէս իբր 1250ին կար աս պատարագաց Հաւաքումը, ինչպէս Լուգդունեան մատեանն ունի։ Անոր հայրենիքը շատ

* Հոս կ'աւարտի՝ մեր Յաւելուածը: ՀՐՏՐ.

¹ "Արդ ես... յանկ ելեալ սուրբ մատեանս պատարագամատուցի...։ Եղեւ ստ գրեալ ձեռամբ ...։"

հաւանականաբար Անարզաբայ բերդաքաղաքն է, Կիլիկիոյ նոյնանուն հին մայրաքաղաքներէն մէկը, կամ գլխաւորաբար անկէ տարածուած է։ Լուգդունեան օրինակը Անարզաբա գրուած է՝ ուրիշ հոն գտնուած օրինակէ մը։ Անդրէի Ուխտին օրինակն ալ անշուշտ գաղթական էր ան վանքին մէջ Անարզաբայէն տարուած. վասն զի անոր յիշատակարանին մէջ Անարզաբա ապրած եւ հոն 1314ին արդէն վախճանած է։

Աս՝ տեղւոյ, ինչպէս նաեւ ժամանակի, պարագայք՝ կը տանին զմեզ, ուզենք չուզենք, անանկ մէկը մեզի յիշեցնելու՝ որն որ յանիրաւի արհամարհուած, շատ քիչերէն մէկն է մեր պատմութեան մէջ՝ որուն վրայ բարեպաշտութիւն, հմտութիւն եւ գործունէութիւն գրաւոր եւ առաջնորդական՝ այնչափ առաւելութեամբ գտնուած ըլլան, Գրիգոր Թ. կաթողիկոս, յառաջագոյն եպիսկոպոս Անաւարզայ։ Ահա Թորոս երէց իր յիշատակարանին մէջ զինք կ'երեւայ ակնարկել՝ երբ որ կ'ըսէ.

“Նաեւ արդ եւս ահն իւր հսկող լեալ
Գրիգորիոսն ամենօրհնեալ.„

այս ինքն թէ աս օրհնեալ մարդուն նաեւ մեռնելէն ետքը աչքը կը հսկէ իր անուանը համեմատ։ Սակայն մութ է խօսքին առ նախընթաց եւ առ հետեւորդ ունեցած կապակցութիւնը։ Օրինակած մատեննին համար Թորոս երէց կ'ըսէ թէ

“Պատարագք են միացեալ,
Ազգաց հնգից որ թարգմանեալ.„

վասն զի վերնագիրները հարազատ ենթադրելով՝ ստուգիւ հինգ են ան պատարագաց ազգայնութիւնները, այս ինքն Յունաց առ հասարակ, Եգիպտացւոց, Հայոց, Ասորւոց եւ Հռոմայեցւոց։ Սակայն չթարգմանուածները թարգմանելու համար՝ մինակ երեք լեզու հարկաւոր էր. յոյն, ասորի եւ լատին։ Աս երեքին ալ տեղեակ՝ երեքէն ալ թէ կը թարգմանէր եւ թէ թարգմանել կու տար Գրիգոր յԱնարզաբայ (Անաւարզեցի)։ Լուգդունեան մատենին մէջ պարունակուածը կատարելապէս իր գործքերուն տիպն ունի։ Աս լեզուներէն՝ եկեղեցական պիտոյից համար իրեն նիւթեր կը հաւաքէր։ ծանօթ է իրեն Վկայաբանութիւնը. իրենն է եւ ինք ընել տուած է, չենք տարակուսիր, Կանոնաց հաւաքումն ի յունէ թարգմանուած, ինչպէս որ (իր թղթին մէջ) ինք կ'ակնարկէ։ Լուգդունեան մատենին խրատագիրներուն մէջ իրեն ուղղելու ըրած վարդապետական եւ բարեկարգական ջանքերը շօշափելի են. բարեպաշտութիւն մը կը շնչէ բոլոր ընթացքին մէջ։ Նոյն իսկ ժամանակին հայկական լեզուին տկարութիւնը կը զգացուի։ Այսչափ նշաններ եթէ չեն որոշեր թէ իրե՛ն պարտական ենք աս հաւաքումը, գէթ ոչ ամէն կասկածէ վեր է՝ թէ նոյն գործը նոյն ատեններ, գլխաւորաբար իրեն զարմանալի գործօնութեամբը, Հայոց մէջ զօրութիւն առած ուղղափառութեան հոգւոյն յառաջ բերած արդիւնքն է։ Բովանդակ մատեանը մէկ ծայրէ մէկալը՝ ասիկայ կ'աղաղակէ։ Անոր համար չփրկուեցաւ ան մատեանը ետքէն զօրացած անջատման մէջ. անոր համար ալ չընդօրինակուելով գրեթէ բոլորական կորստեան մատնուած էր։ Ուրծայ վանքը Ներսէսի աբեղայի համար կ'ընդօրինակուի. սակայն ի՞նչպէս. ոչ ամէն պատարագ եւ ոչ ալ օրինակուած ըստ ամենայնի. զերենք խայթելու յարմարը մէջէն հանուած կամ փոխուած։

*Գաղղիոյ պարտական ենք՝ միակ օրինակով մը Հայոց, մանաւանդ թէ եկեղեցւոյ Աստուծոյ, ասանկ գանձ մը պատսպարելուն։ Ո՞վ գիտէ որ պատահմունք եւ անձինք, գուցէ շատ կանուխ, զանիկայ հին Լուգդունոն տարեր ձգեր են՝ որ աս այսօրս 561 տարուան մատեանը, հիմա նոր՝ գոնէ ըստ կարեւորագոյն մասին՝ ի լոյս ընծայուի։*

*Աս հայերէն (թէպէտ տեղ տեղ — աւաղ — քիչ մը ցիրուցան) բնագրին հնութեանն ոչինչ կը հասնի, ոչ հին հռոմայեցի թարգմանութիւնը եւ ոչ Բարբերինեան Աղօթամատուցին սկիզբն եղած Բարսղի պատարագը, որն որ թէպէտ նախընթաց թարգմանութենէն բաւական երիցագոյն կ'երեւայ, բայց շատ կրսեր կը մնայ հայերէնէն. հազիւ իբր 900ին գրուած կը համարուի նոյն մատեանը։ Սակայն աս երկու վերջիններն են՝ զորոնք ամէնէն աւելի մեր հայերէն բնագրին հետ համեմատութեան պիտ'որ առնունք հարկաւ։ 13րդ դարէն է մեր ձեռքն եղած Էրլէրտ հայերէն թարգմանութեան ձեռագիրը. թարգմանութիւնը հարկաւ անկէ շատ յառաջ է։ Վերոյիշեալ Բարբերինեան Օրինակին եւ լատին թարգմանութեան բաղդատ մերձաւորագոյն կու գայ ասիկայ, բայց աւելագոյն եւս հիմակուան յունական բնագրին։*

*Աս վերջինը, ինչպէս յայտնի է, իր բոլոր բիւզանդեան զարդարանքներովը, երեք մաս ունի. — մասն Առաջադրութեան* (τῆς προθέσεως) — *մասն Պատարագին երախայից, եւ — Պատարագամատոյց* (προφορά)*։ Բարբերինեան մատեանը դեռ առաջին մասը կերպաւորած չունի։ Այսպէս հռոմայեցի թարգմանութիւնը, թէպէտ կարմրագրաց նկատմամբ նախընթացէն ճոխագոյն ըլլայ։ Հնագոյնն է, կ'ենթադրենք, առաջին հայերէն թարգմանութիւնը, որն որ մի միայն վերջին մասն ունի, այս ինքն Ս. Բարսղի կարգաւորութիւնը՝ առանց վերջին յաւելուածոց։*

## 2.

### *Բարսեղեան պատարագին աղբիւրները:*

**Յայս օր մեր մատենագրութեան հնագոյն յիշատակարանաց վրայ ըստ մեծի մասին ողջմտութեամբ խօսուած չըլլալով՝ ստէպ կը ստիպուինք շեղելու, որպէս զի մեր աս մասին աղբիւրներուն յարգն ու պատմական հեղինակութեան աստիճանը, որչափ եւ որպիսի մեզի կ'երեւայ, ճշդենք մեր առաջիկայ պիտոյից չափովը։*

*Բարսղի պատարագը այնպիսի թարգմանութեամբ է մեր ունեցած օրինակներուն մէջ, որ մեր 5րդ դարուն առաջին կէսին աննման լեզուն** է։ Պատարագամատոյց մը ոչ հոգեւոր եւ ոչ զուարճալի ընթերցուած ըլլալու համար կը թարգմանուի, այլ գործածութեան եւ պիտոյից համար, եւ ան ալ՝ ոչ առանձնական այլ եպիսկոպոսական իշխանութենէ։ Բայց թէ իրօք՝ մեր ըսած միջոցին անի գործածուած է, ինչպէս կրնանք ապացուցանել կամ շօշափել տալ՝ բայց եթէ մատենագիրներով։ Մէկ երկու մատենագրութիւն հազիւ ունինք ան մի-*

---

* Անկէ սկսեալ հեղինակին քննութենէն սա կտորը հրատարակուած է՝ իբրեւ գործոյս նախընծայ ճաշակ՝ Հանդէս Ամսօրեայ թերթին մէջ. (1889, Թ. 2, էջ 40։) ՀՐՏՐ.

** Հեղինակն ուզած է հոս իւր ընտրած բացատրութեամբը "չնմանուած լեզուն„ ըսել. այսինքն՝ որուն չկրցան յաջորդ դարերը նմանիլ։ ՀՐՏՐ.

ջոցին վերաբերեալ։ Դեռ 5րդ դարը չընդմիջած՝ երեք գլուածք Հայաստանի քրիստոնէութեան պատմութեան նկատմամբ շատերուն ձեռքը կը պտըտէին ան ատենները, երբեմն ալ կամ անանուն եւ կամ ուրիշ մէկու մ՚անուամբ։ Ասոնք ծանօթ են մեզի հիմայ՝ — Թադէոսի առաքելոյ ի Հայս գալստեան, քարոզութեան եւ վկայութեան, — Ագաթանգեղեայ պատմութեան — եւ վերջապէս իբր անոնց շարունակութիւն՝ Փ. Բիւզանդացւոյ՝ պատմութեան անուամբ։ Գոնէ վերջին երկուքը նոյն դարուն առաջին տասնամեակներուն՝ արդէն կային ի միջի. որովհետեւ Կորիւն, Ս. Մեսրոպայ վարքը իբր 442ին գրողը, երկուքէն ալ հատուածներ կ՚ընդօրինակէ իր արդէն կարճ գրութեան մէջ։* Աս երկուքը՝ Ագաթանգեղոս եւ Փ. Բիւզաս կոչուած, մեզի առ այս բաւական են զարմանալի կերպով — անոնց պատմական արժէքն ալ բոլորովին մէկդի դնելով — միայն սա կէտին բանին հաստատելու թէ

Ասոնք երկուքն ալ անվրէպ 1. ան միջոցին գրողներ են, եւ

2. բուն Հայք՝ նոր հայկական դպրութեամբ եւ ոչ յունարէն, ինչպէս շատ կեղծիքներ եղան ցայսօր, բայց առանց հիման. այլ են հայք՝ յունականին եւ ասորականին, ինչպէս կ՚երեւայ, ոչ անմասն, այս ինքն ճիշդ ան միջոցին կրթեալ Հայոց դասուէն։

Աս երկուքէն առաջինը՝ Ագաթանգեղոս, զորն որ “Գրիգորիսի գիրք„ կ՚անուանէին ան ատեն՝ համառօտելով Գրիգորիոս[2] անունը, իր չափազանցութիւնները խօսքի համեստ ձեւովն ու կարգաւորութեամբը ծածկած է։ Ձեւանայ՝ որչափ կ՚ուզէ՝ 4րդ դարու յոյն կամ հռովմայեցի մարդ ըլլալ, 5րդին սկիզբներն է.** բնիկ հայ մըն է, շատ հաւանականաբար եկեղեցական մը՝ որն որ եկեղեցական վարդապետութեամբ զօրաւոր, եւ ի մասնաւորի՝ նուիրագործութեան ոչ անհմուտ, եւ Բարսղի պատարագին ընտանի, որ եւ ուրիշ պատարագաց ալ տեղեկութիւն կը ցուցընէ։ Զարմանքով կը կարդանք, երբ որ ինք իր ժամանակը մեզի մատնելով՝ կ՚ըսէ, (էջ 77) այսպէս աղօթել տալով Ս. Գրիգորի. “Տուր համբերութիւն կատարել ընթացս իմ նեղութեամբս՝ յոր կամս, բժիշկ ցաւոց մերոց, ողջացուցիչ բեկելոց, անդորրիչ նեղելոց եւ արձակիչ կապելոց, մխիթարիչ սգաւորաց, յոյս անյուսից, խռովելոց հանգիստ, աշխատելոցնաւահանգիստ, որ նայիս սիրով յարարածս քո, եւ կերպարես զամենեսեան քաղցրութեամբ քով . . . արժանի եղէց վերանալ ընդ առաջ Որդւոյ քոյ սիրելւոյ, յորժամ յափշտակեսցէ զանձկացեալսն իւր ի ճառագայթ լուսոյ իւրոյ։„ Կրնան տեսնուիլ

[1] Բոլորովին անխորհուրդ մակաբերութեան մը ականջ մատուցանելով Վ. Լանկլուա ի շարս հայ պատմագրաց, աս գրքին գաղղիերէն թարգմանութեան վերջը կը փութայ — իբր գիւտ մը — ծանուցանել թէ սոփկայ 7դ դարուն Եղնիկ անուն երիցուէ չինուեր է։ Բայց ինչպէս արդէօք 5դ դարուն մէջ Ղազար զանիկայ կ՚անուանէ, կը յիշատակէ ու կը գործածէ, եւ անկէ յառաջ Մովսէս Խորենացի, նոյնպէս անկէ յառաջ Կորիւն կ՚ընդօրինակէ անկէ կտորներ։ Պէտք իսկ չէր մեր ազգային համար աս տողերը գրել. սակայն մեր բաներուն շատ չըպաղած օտարազինք կրնան Լանկլուային հաւատ ընծայել։

[2] “Գրիգորիսի գիրք„ կ՚անուանուէր Ագաթանգեղոսի գիրքն առ հինսն. վասն զի հին Հայաստանեայց, որոնք մարդու անուն երկավանկ կը սիրէին, գժուարին կու գար երեք վանկէ աւելի երկայն անուն։ Դեռ 7դ դարու մէջ առ Սեբէոսի “Գիրք Ս. Գրիգորիսի„ կ՚անուանուի։ —Նոյնպէս Փարպ. (էջ 2. տպ., 1873) “Յորոյ անուն եւ գիրքն անուանեալ կոչէին Գրիգորիսի։„

* Հմմտ. ասոր հակառակ՝ Հ. Յկ. Տաշեան “Ագաթանգեղ. առ Գէորգայ եպիսկոպոսի եւ Ուսումնասիրութիւնք Ագաթանգեղեայ գրոց։„ Վիեն. 1891, էջ 79:

** Տես Տիեզ. պատմ. Հ. Յովս. Գաթրճ. Բ հատ. եր. 476:

*տանք Ս. Բալալի Ցիշատակաց վերջերը։ Ուստի ան Տրդատայ ատենադպիր ձեւացողը՝ առջին ունի աս մեր 5րդ դարուն՝ գրոյն գիւտէն ետքը եղած թարգմանութիւնը, կամ նոյնը ի կիրառութենէ սորված է բերնուց։ Բայց Կանոնն ալ դարձեալ նոյն թարգմանութենէ մաս մը մեզի յառաջ կը կոչէ այսպէս. "Ոչ թողեր ի ձեռանէ վասն բարերարութեան քոյ," որն որ մեր թարգմանութեան՝ "Ոչ թողեր ի ձեռանէ բարերարդ Աստուած" կտորէն առած է ան Հայոց դարձը պատմողը. թէպէտ յոյնը քիչ մը տարբերի։*

**Աստ հակառակ՝ տարօրինակ վիճակի մէջ կը գտնենք "Փ. Բիւզանդացւոյ" կոչուած մատեանը։¹ Աս վիճակն իրեն նախնական է. վասն զի անանկ բուն հայկական յատուկ լեզու մ'ունի՝ որ ինչեւիցէ փոքր կամ մեծ ընդմիջարկութիւն* (interpolation) *կը մատնուի. եւ նոյն իսկ ան դարուն՝ ան մատեանն այսպէս եւ ոչ այլազգ տեսած է ամենայն ոք։ Ղազար 5րդ դարուն վերջերը Վահանայ Մամիկոնենի հրամանաւ վերոյիշեալ պատմագրաց շարքը, ինչպէս ինք կ'ըսէ, շարունակելու ձեռնարկելով՝ ի սկզբան իր նախորդաց վրայ դատաստան մը կ'ընէ։ Ագաթանգեղեայ վրայ գովեստէն ուրիշ խօսելու բան մը չունի. որովհետեւ իրեն՝ մանաւանդ թէ իր ժամանակին՝ բանաքննականը չէր կրնար այնչափ յառաջ անցնիլ՝ որ նաեւ անոր վրայ գոնէ քիչ մը յերկուանար։ Սակայն Փաւստեայ գիրքը չարաչար կ'ելէ անոր դատաստանէն. եւ ի վերջոյ սոյն անպատեհութեան ծագումը փնտռելով՝ կ'ըսէ Ղազարշապատու Կաթուղիկէի վանաց երէցը. "Ի Բիւզանդիոն, յայնպիսում քաղաքի եւ ի մէջ այնչափ բազմութեանն ուսելոյ (ուր ինքն Ղազար ալ անձամբ գտնուած է,) վարժեալ այրն Փաւստոս՝ այնպիսի ինչ արդեօք անհաճոյս լողաց բանս կարգէ՞ր ի պատմութեան իւրում. քաւ եւ մի լիցի։ Ուստի եւ անհաւատալի իմում տկարամտութեանս կարծեցեալ գործն, առեմ թէ գուցէ այլ ոք յանդուգն եւ անհրահանգ բանիւ քաջաբար ձեռնարկեալ յիւրն, գրեաց զինչպէս ըստ կամի, եւ կամ զի ուրուք անկարեալ դիպողս՝ այլաբանեալ փնասեաց, եւ անուամբ Փաւստոսին զիւրոյ յանդգնութեանն սխալանս համարեցաւ ծածկել։²" Կան անանկ ընողներ — կ'աւելցընէ — Յունաց մէջ, աւելի եւս՝ Ասորւոց մէջ,* (էջ 14.) *բայց քիչ չի գտներ այնպիսի "յանդուգներուն" թիւը նաեւ Հայոց մէջ* (էջ 7)*։*

*Նոյն կամ նման է մեր համոզումն ալ աս գրքին ծագման վրայօք՝ նոյնը շատ անգամ հոլովելէն ետքը այլեւայլ առթի մէջ։ Ան ժամանակի Հայ մը իր սեպհական գրուածքը ծանօթ յոյն ժամանակագրի մ'անուամբ կը զարդարէ, իբրեւ թէ, անոր ժամանակագրութիւնն է՝ որուն հետեւած ըլլայ Հայը, ինչպէս իրօք ալ տեղ տեղ ուղիղ ժամանակագրութեան հետեւած է Յունաց կայսերաց եւ Պարսից պատերազմաց նկատմամբ՝ բաւական համարելով այսչափը՝ իր թեթեւամտութեամբը։*

*Թէ աս գիրքը "Փաւստոսի" մը կ'ընծայուի, ուրիշ անզէն չէր կրնար Ղազար առնուլ՝ բայց եթէ նոյն գրքին Գ. դպրութեան վերջը նոյն Դպրութեան կատարուած ըլլալուն կարճ ծանօթութենէն՝ որն որ թէպէտ ըստ մեր օրինակաց*

---

* Բուզանդայ նկատմամբ այս հատուածն ալ հրատարակուած է ի Հանդէս Ամսօր. 1889, Թ. 2, էջ 40 եւն: ՀՐՏՐ.:

¹ Որն որ "Հայոց պատմութիւն" կ'ըսուէր թէ իր ժամանակը եւ թէ ետքը՝ գոնէ բաւական ատեն։ Այսու անուամբ 6դ դարուն կէսերը Պրոկոպիոս ինչ ինչ լսած է ան գրքէն՝ անշուշտ Յուստինիանոսի արքունեաց մէջ եղամուտ ունեցող բազմութիւն Հայոցմէ։

² Ղ. Փարպեցի. Յառաջաբանին մէջ։

այսպէս գրուած է, «Ժամանակագիր Կանոնք Փաւստոսի Բիւզանդեայ ժամանակագրի մեծի պատմագրի, որ էր ժամանակագիր Յունաց,» Հարկաւ Ղազար ուղիղը կը կարդար այն ատեն, այս ինքն՝ Փաւստոսի Բիւզանդեայ: Բոլոր գրքին մէջ ուրիշ տեղ «Փաւստեայ» անուան աս գրութեան եւ ոչ մէկ մասը սեպհականուած է գրողէն. Հապա կ'ըսուի միայն «Բիւզանդարան պատմութիւն» (այս ինքն Բիւզանդեայ վերաբերեալ, ասոր հետեւելով,) կամ «Չորրորդ» Դպրութիւն Բիւզանդեայ, որն որ չի նշանակեր Բիւզանդացի, ինչպէս Ղազար կ'իմանայ առանց հիման (էջ 8 եւ 12.) եւ ի Բիւզանդիոն կը փնտռէ գրքին հեղինակը: Մեր գրքին կարծեալ հեղինակին անունը «Փաւստոս Բիւզանդացի» չէ. Հապա Փաւստոս Բիւզաս է, (սեռական՝ Փաւստոսի Բիւզանդեայ = Βύζας, սեռ. Βύζαντος) զոր որ լիր-թարգմանիչը վերյիշեալ ծանօթութեան մէջ ամբողջ դնելով՝ ուրիշ երկու երեք տեղ իբրեւ անոր յատուկ անունը կը գործածէ. «Չորրորդ Դպրութիւն Բիւզանդեայ, — Հինգերորդ Դպրութիւն Բիւզանդեայ, — Բիւզանդեայ վեցերորդ խոստաբանութիւն.» Ի նոյն կը կարգի ատէպ ըսուած «Բիւզանդարան պատմութիւնն» ալ, այս ինքն Պատմութիւն Բիւզանդեայ: Ըստ այսմ՝ շատերուն պէս այն ատենը կրկնանուն ժամանակագիր մըն է եղեր Փաւստոս Բիւզաս. (ինչպէս «Ամմիանոս Մարկեղղինոս».) Իսկ կրկին անուններէն, ինչպէս սովորութիւն էր հնոց, վերջինը իբրեւ բուն անուն կ'առնուէր: Ասանկ կ'առնուի նաեւ աս գրութեան մէջ:

Արդ մեր Հայը՝ թէպէտ առջին անդին ցանած ըլլայ աս հիմա մէջտեղը չեղող Յոյն մատենագրին անունը՝ «Բիւզանդեայ Կանոնք» ըսելով, չունի միայն ամէն բան անոր սեպհականելու՝ ինք զինք ծածկելով: Ինչն՝ հոս՝ թէպէտ յունարէնագէտ՝ հեղինակը չաշխատիր Յոյնին բերանը դնելու, հապա յանուն իր կը խօսի՝ — առակք, առասպելք, ցուցք, ազգային եւ ընտանեկան սովորոյթք — աս՝ բուն հայ հողէն բուսած, բոլոր հայ երկիրը թզաւ եւ քլաւ չափած, ամէն մէկ տողին մէջ իր հայրենակցաց գաղափարներով սնած՝ մարդը: Մանաւանդ թէ իր ցեղն իսկ եւ գաւառը բացայայտ մեզի կը ծանուցանէ իր առաջին Դպրութեան մէջ՝ Յուսկան հետ Կեսարիա խաւրուող նախարարաց մէջ յիշելով ի մասնաւորի Սահառունեաց իշխանը, իբրեւ իր տոհմին նախարար:[1]

Առանց հիման փնտռուած ծերունի Փաւստոս յոյն եպիսկոպոսի մը հետ զորն որ հեղինակը կը յիշէ,[2] կ'ուղղուի զինք նոյնացընել, եւ կամ յունական ոգւոյ ընդդիմութիւն մը Հայոց հակառակ գտնել անոր քով — այն խօսքերուն մէջ՝ որոնք մանաւանդ պատմական եւ հիմնական խորհրդածութիւն կ'երեւան: — Եթէ ասանկ ըլլար՝ այն ատեն պէտք էր՝ իր 60 տարի անկէ ետքը երեք գիրք Հայոց պատմութիւն գրող ծերունին ալ* հանել Թորգոմայ ժառանգութենէն եւ օտար համարել:

Դարձեալ, Սահառունին խօսելու ատեն երբեք յոյն չի ձեւանար՝ շինծու գրքերու յատուկ ձեւացմամբ: ԶՓաւստոս Բիւզաս չէ թէ «Հայոց» ժամանակագիր կը ցուցընէ, այլ «Յունաց պատմութիւն» գրող: Վերնագիրներովը՝ միայն անկէ նիւթ առած ըլլալը կը յայտնէ, զանիկայ առջեւն ունենալով անոր անուամբն ուզելով իր էջերը զարդարել: Ի դէմս Փաւստոսի խօսուած՝ բոլոր գրքին մէջ եւ ոչ բառ մը կը գտնենք. — տուեալ Սահառունին է որ կը խօսի:

---

[1] Գ. Դպր. ԺԲ. էջ 29. «Եւ զմերոյ տոհմի ազգի իշխանն Սահառունեաց:»

[2] Զ Դպրութիւն. Ե. էջ 264:

* ԶՄովս. Խորենացի պատմագիր: ՀՐՏՐ.

*Նմէ բացատրութեան մէջ կաղութիւն մը կայ, ատ եւ ասանկ թերութիւններ որ եւ իցէ դիպաց վրայ խօսելու ատենը զգալի կ'ընէ աս Սահառունին:*

*Վերջապէս գրքին ծայրը չէ խորշած իր վրայ տեղեկութիւն ալ տալու, հնոց սովորութեան համեմատ՝ յապագայս ձեռնամուխ եղողներուն դժուարին ընելու համար աւելցնել կամ պակսեցնել. Նոյն տեղեկութիւնը՝ մասնաւորապէս նշանակելով Զ. Դպրութեան գլխակարգութեանց մէջ՝ թէ 10 տուն է անիկայ, ոչ աւելի ոչ պակաս, ըսելով. "Ստորոտ ամենայն պատմութեանց յաղագս իմ տեղեկութեան, որք միանգամ ղմատեանս ընթեռնուք, տունք տասն համարական թուոց:" Տասն ալ հիմա չկայ, որն որ առ հասարակ հին գրոց յիշատակարանաց սովոր պատահած դժբախտութիւն է: Աս զանցառութիւնը շատ կանուխ եղած պիտ'որ ըլլայ. հաւանականաբար եւ ոչ Ղազար կրցած պիտ'որ ըլլայ կարդալ մինչեւ ի տասներորդն:*

*Աս բնիկ հայ պատմագիրը կ'ուզէր քրիստոնեայ Հայաստանի պատմութիւնը շարունակել իբրեւ "Յիշատակարանք յիշեցուցիչք պատմութեանց ազգացն Հայաստան աշխարհին որդւոցն Թորգոմայ:" (Խոստաբան. Նախագիտ.:) Անիկայ ինք բացայայտ գրքին սկիզբը (Գլ. Ա.) կ'ըսէ. "Ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ եւ նորուն յելիցն եւ ի մարտիրոսութենէն մինչեւ ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի եւ հանգստեանն," (Նոյնն ու քիչ խօսքերով կրկնելով) "եւ յառաքելասպանն Սանատրկոյ արքային մինչեւ յակամայ հնազանդելն հաւատոցն եւ ի նորուն հանգստեան արքայի Տրդատայ զանցեալ իրացն . . . . այն ամենայն ի ձեռն այլոցն գրեցան: . . . . Այս ինչ որ ինչ յետ այսորիկ, աստ պատմի աստէն առ սմին:" Այս ինքն. "Ի թագաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչեւ ի միւս վերջին ժամանակն վատթարելոյ թագաւորացն Հայոց, (եւ ուրիշ խօսքերով կրկնելով՝) "եւ ի քահանայապետութենէն Վրթանայ որդւոյն Գրիգորի առաջնոյ քահանայապետի մինչեւ ցայնսիկ ի վերջինսն որք կացին գլխաւորք եպիսկոպոսք Հայոց:" Եւ իբրեւ ան երկու յիշեալ գրոց — Քարոզութեան Թադէի եւ վարդապետութեան Գրիգորի — շարունակութիւն՝ իր չորս գրքերը կը սկսի իբրեւ Գրդ, Դրդ, Երդ եւ Զրդ համրել: Անոր համար ալ "Երրորդ Դպրութիւն" վերնագրին վրայ անմիջապէս կը յաւելու "իսկիզբն" բառը, որպէս զի մատեանը ձեռքն առնողը՝ պակասաւոր չգտնէ կամ չչփոթի:*

*Ուստի գիտենք ինչ կ'ուզէ գրել մեր Սահառունին. սակայն ինչպէս կը գրէ: Ստուգիւ շատ տարօրինակ՝ եթէ ամէն բան մէկտեղ առնունք: Սակայն այս ամէն բանին վրայ տարածուելու մեր առաջիկայ նպատակին համար հարկաւորութիւն չկայ: Թէ յունական պատմագիր մը, կամ՝ ինչպէս ինք կ'ըսէ, ժամանակագիր (χρονογράφος) մը առջեւն ունի, յայտնի է քանի մը գլուներէն՝ ուր ամբողջ ժամանակի կարգաւ անցքեր կը յիշուին Ամմիանոսի Մարկեղինոսի համեմատ.*[1] *սակայն իրեն յատուկ գլխաւորաբար երկու բան է, այս ինքն՝ մէյմը աւելորդ շեղումներ, բան մը՝ ինչ կ'ուզէ ըլլայ՝ խօսիլ ուզելով. երկրորդ՝ մէկ այլուստ գիտցած պատմութիւնը բոլոր հայկական ընել: Օրինակի աղագաւ. գիտէ Սրբոյն Բարսղի պատմութենէն բաւական բան. — անոր վրայ իր եպիսկոպոսին Եւսեբիոսի ունեցած մարդկային կիրքը, առոր հետեւութիւնը, Արիանոսաց կողմանէ Կեսարիոյ արքեպիսկոպոսին նեղ մտնելով՝ Բարսղի կան-*

[1] Տես ասոր վրայ մեր Տիեզ. պատմ. Հատ. Բ. էջ 497—509:

չուիլը եւ ասոր անոնց հետ վիճաբանութիւնը, Վաղէսի հոն գալը, մեծ սովը, եւ ան միջոցին Բարսղի աղքատաց ըրածները։ Շատ բան ասոր վրայէն Սրբոյն Ներսէսի վրայ կը ձեւէ, որն որ իր գրքին մէկ մասը կը կազմէ. Բարսղի տեղ՝ զՍուրբ Ներսէս Վաղէսի դիմաց խօսելու կը հանէ. կայսերական ատեան հիւանդութեան եւ առողջութեան համար Բարսղի տեղ՝ Ներսէս կ'աղօթէ կամ կը սպառնայ կայսեր։ Ներսէսի Սարկաւագապետին Խադայ հրաշից նկատմամբ կ'օրինակուի ինչ ինչ անապատաւոր հարց պատմութեանց մէջէն։ Ուրիշ վանական պատմութեանց կամ Հարանց վարուց (πατερικόνի մը) մէջ կարդացածն ի Հայաստան Մամբրէ միայնանոցը կը բերէ անշուշտ։

Ի վերայ այսր ամենայնի, թէպէտ մեծ պիտ'որ ըլլար աս մեզի շատ անծանօթ՝ Հայաստանի 4րդ դարուն պատմութիւնը, եթէ ըստ օրինի գրուած ըլլար, դարձեալ աս ամէն թերութիւններուն ալ՝ — ոչ միայն բանասիրական կամ լեզուագիտական մասը,[1] այլ նաեւ ի մասին աշխարհագրական եւ պատմական ծանօթութեանց՝ բաւական մթերք մը կը մատակարարէ։ Նոյն իսկ ան յիշեալ կրկին գլխաւոր թերութեան կամ՝ այսպէս ըսենք՝ վատթար ունակութեանը պարտական ենք ան Ե. գրքին ԻԸ. գլուխը, որն որ այսչափ մեր առաջիկայ նպատակին կը ծառայէ՝ 5րդ դարու առաջին կէսին Հայաստանի մէջ կատարուած պատարագին չէ թէ միայն ինչ բնութիւն, հապա՝ ինչպէս ընդ հուպ կը տեսնենք՝ ինչ ընդհանուր ձեւաւորութիւն ունենալուն վրայ լոյս մը տալով։

Այսպէս մեր Սահառունին, որն որ շատ հաւանականաբար եկեղեցական մը, քահանայ կամ եպիսկոպոս մըն է, ինչպէս ուրիշ շատ նիւթերու մէջ՝ մեր նպատակին ալ սքանչելապէս կը ծառայէ. եւ նոյն իսկ իրեն թեթեւութեանցը պարտական ենք՝ որ աս միջոցին, այս ինքն Բարսղի պատարագին (հայկական թարգմանութեան) կատարուած ատեն՝ մեզի առատ ծանօթութիւն կու տայ, նախ՝ բոլոր գրուածոյն մէջ պզտի կտորներ անկէ զոդելով Ներսէսի ի Ձիրաւու պատերազմին ըրած աղօթքին մէջ, ետքն ալ՝ Զուիթայ երիցու վկայելու ատեն ըրած աղօթքին, եւ վերջապէս՝ Մամբրէի Եղբայրանոցին մէջ սքանչելիք մը, իրաւ կամ սուտ, պատմելով՝ կու տայ մեզի աս թարգմանութեան վրայ համառօտած պատկեր մը, որն որ մեր հայ օրինակներուն այնչափ համեմատ կ'ելլէ. այնպէս որ շատ անգամ կ'ուղղէ իսկ մեր հիմակուան օրինակները։

Մեզի առ այժմ ստիպում մը չկայ աս գրքին երկու նախընթացներուն վրայ խօսելու։ Ասոնցմէ առաջինը «Քարոզութիւն Թադէի եւն» չենք տարակուսիր թէ ի Սոփերք Ը. հրատարակուածն է, 12րդ դարու գրուած ձեռագրէ մը 1853ին ի լոյս ընծայուած. բայց ստուգիւ հոն գոնէ Տօնականաց կամ Ճառընտրաց հասարակ եղած այլայլութիւններ՝ մանաւանդ սկիզբները՝ յաճախ ըլլալով, հնագոյն կամ լաւագոյն օրինակ մը կը սպասուի աս ասորի բնագիր ունեցող գրութեան, որն որ չէ թէ միայն Մ. Խորենացւոյն, հապա մեր Սահառունւոյն ալ, ինչպէս տեսանք, ծանօթ է։ Իսկ երկրորդը (Ագաթանգեղոս), որուն յարգը այնչափ պատմական չէ, (վասն զի ըստ այսմ ան բազմաթիւ վկայաբանութեանց կարգը պէտք կ'ըլլայ դասել՝ որոնց նախահաւատակներուն գոյութիւնն ստոյգ, բայց

[1] Հ. Մկրտ. Վ. Աւգերեան. (ի յառաջաբանի Հայկազեան Բառ.) «Թարգմանութիւնն (այնպէս թարգմանուած կ'ենթադրէ աս Հայրը.) է քաջ հայկաբան. մինչ զի բառքն են [illegible] գտանին։»

պատմութիւնը ստկաւ մասամբ կամ ըստ գոյութեան միայն ստոյգ է,) որչափ վարդապետական։ Անոր համար կրնայինք հոն ինչ ինչ մեր նպատակին յարմար գտնել։ Իրօք պատարագի Նախերգանի մը եւ անոր յաջորդող Կանոնին վրայ ձեւուած աղօթք մը կը դնէ Հայոց Լուսաւորչին բերանը՝ անոր չարչարանաց ատեն, ինչպէս քիչ մը յառաջ յիշեցինք. (երես 77։) Բայց ասիկայ որոշ մեզի ծանօթ պատարագի մը ծանուցիչ մասունք չունի, հապա միայն հին Նախերգանի մը նիւթն եւ ընդարձակութիւնը անորոշակի։*

Զարմանալի է՝ որ Փարիզ քանի մը տարի յառաջ գաղղիերէն հրատարակուած հայ պատմագրաց շարքին մէջ, չէ թէ միայն աս վերջին յիշատակուած կտորը չի գտնուիր, — վասն զի գրքին բոլոր վարդապետական մասը թարգմանուած չէ, — հապա նաեւ Փ. Բիւզանդեայ Ս. Դպրութեան ան գլուխը՝ որուն մէջ աս մեզի կարեւոր մեծ հատուածը կայ, բոլորովին զանց եղած է, անշուշտ իբրեւ ոչինչ իմիք պիտանացու։

Ուրիշ կ'ըլլային անշուշտ մեր աղբիւրները պաշտամանց վերաբերեալ իրողութեանց նկատմամբ, եթէ կանուխ քարոզուած աւետեայ վարդապետութիւնն ի ծաղկի խափանուած չըլլար Հայոց հողին մէջ։ Սակայն աս ալ ըլլալով՝ կրնար՝ դեռ 3րդ դարը չգոյուած քրիստոնէութիւնն ընդունող երկիր մը՝ ցայս վայր իբրեւ հատակոտոր կամ իբրեւ ամբողջ պատարագ յառաջ բերուածներուն հանգիտապատիւ յիշատակարաններ ցուցընել, եթէ իրեն սեպհական դպրութիւն մ'ունենար, եւ ըստ հետեւորդի՝ անով պաշտամանց գրքեր ստացած եւ գործածած ըլլար։ Վասն զի Հայաստանի դարձէն գրեթէ ամբողջ դար մը, եթէ յունական մատեաններ գործածուեցան՝ մանաւանդ ի սկզբան, ասոնք՝ աս կղզիացեալ երկրին մէջ, նախնիկեան պատարագներ միայն կրնային ըլլալ, Առաքելական Սահմանադրութեանց պատարագին՝ հնութեամբ հաւասար։ Բայց ինչպէս կ'երեւայ մի եւ նոյն ատեն, աւելի սահմանակցութեամբ Ասորւոց՝ հին ասորի պաշտամանց գրքեր կը գործածուէին, որոնք վերջապէս տիրող եղան 4րդ դարուն խոնարհելու վրայ եղած ատեն բոլոր պարսկական Հայաստանի մէջ։

Անկարելի չէր՝ որ աս երկլեզուեան ժամանակէն՝ Արիստակէսներուն եւ Ներսէսներուն գործածած յունարէնները, բայց եւս աւելի դիւրին՝ գոնէ անոնց յաջորդաց՝ ասորի մատեանները՝ որոնք դեռ ամէնուն ձեռքն էին, 4րդ դարէն ասդին անցնէին թարգմանութեամբ՝ հայկական դպրութեան սկիզբները։ Սակայն չէ եղած ասիկայ։ Անոր համար պարապ են՝ ինչ որ Հայոց Լուսաւորչէն որոշ խօսքերով կամ գրաւոր կերպով յառաջ կը բերուին — Պատարագ, Հանգանակ, անոր Յաւելուած ("Իսկ մեք փառաւորեսցուք,) եւ ասոնց նման կեղծիք։ Ոչինչ այսպիսի կրնայ ապացուցուիլ՝ ոչ անկէ եւ ոչ յաջորդներէն 5րդ դարու դպրութեամբ արձանագրուած։ Ամենայն ինչ նորոգ ուզեցին մեր Հայք. դարագլուխ կամ դպրութիւն նոր, պաշտամունք նոր. անանկ որ ասորականները

* Հոս կը դադրի "Հանդիսի" մէջ հրատարակուած հատուածիկը։ ՀՐՏՐ.։

[1] Ամենատարակոյսէ ազատ թուականներն են Եւսեբեայ (Եկեղ. պատմ. Թ. գլ. ը) դրուած 311ին Մաքսիմինոսի դէմ Հայոց՝ իբրեւ քրիստոնէից՝ զէնքով դիմադրելը։ Դարձեալ 315ին Կոստանդիանու օրէնքը (Թէոդոսեան մատենին մէջ), ուր Արշակ Հայոց արքայ (աս մեզ Տրդատ ըսուած) դաշնակից է Կայսեր՝ իբրեւ քրիստոնեայ։ Աս տարիներուն մէջ եղած է ուրեմն այնչափ հիներէն յիշուած Ուխտ դաշանց Արշակայ-Տրդատայ ընդ Կոստանդիանոսի։ (Եղիշէ, 7. էջ 54—55)։

թող տուած ատեններին՝ Յունաց մէջ ան ժամանակներն արդէն նորոգուած պաշտամանց գիրքերէն առին, ամէնէն աւելի հռչակաւորն ընտրելով, որն որ մի եւ նոյն ատեն իրեն ամէնէն մօտ գաւառը, հաւանականաբար նաեւ յունական Հայաստանին մէջ, ընդհանուր գործածութիւն ունէր. եւ ասիկայ նոյն իսկ Բարսեղեան պատարագն էր։

Թէ սոյն սա՝ այնպէս ինչպէս որ հիմա առաջին անգամ կը հրատարակենք, ան իրենց սեպհականած եւ գործածածն է 5րդ դարուն սկիզբներէն, արդէն նախընթաց զրուցուածներէն զատ՝ հետեւեալներն անտարակուսելի կերպով կը հաստատեն։

## 3.

*Նշմարք Բարսեղեան պատարագին եւ անոր իրօք ի գործածութեան ըլլալն առ Հայս:*

---

### Ա.

### ՈՒՐՈՒԱԳԻՐ ԲԱՐՍԵՂԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԻՆ ՅԱՌԱՋԻՆ ԿԻՍՈՅ 5ՐԴ ԴԱՐՈՒՆ

Սանկ է Փ. Բիւզանդեայ Ե. Գրքին ԻԸ. գլուխը։

Մեծ ծոփաց նահանգին Մամբրէ ըսուած անապատին մէջ Մամուշեղ գետոյն մօտ Եղբայրանոց մը կար, Յունաց երկրէն եկած Եպիփան ճգնաւորէն հիմնուած, ուր Եղբարց բազմութեան քահանայ մը գլխաւորութիւն կ՚ընէր։ Հոն Եղբայր մը կար խստակրօն, որն որ մթին (ախուր) վարք մը կը վարէր, եւ չէր ճաշակեր ամենեւին "կենարար փրկութեան" եւ "յարութեան յուսոյն" բաժակէն, այս ինքն "Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի արիւնէն։" Վասն զի չէր կրնար հաւատալ թէ ստուգիւ Որդւոյն Աստուծոյ արիւնն ըլլայ՝ երբ որ Աստուծոյ սեղանն ելլէ.[1] իրեն կ՚երեւար թէ հասարակ գինի է. եւ աս բանիս համար շատերուն հետ շարունակ կը վիճաբանէր։[2]

Օր մը երբ նոյն վանքին մատրան մէջ՝ զոր վերոյիշեալ Ս. Եպիփան շինած էր, Գոհութեան պատարագը կը կատարուէր, երբ որ մէկ կողմանէ սուրբ հացը ("հացն սրբութեան") ու գինին՝ որն որ արիւնանալու որոշուած էր, սեղանոյն

---

[1] "Նշանել ի սեղանն Աստուծոյ" հնոց ասութեամբ հաւասար է մեր "սրբագործուիլ" ըսելուն։

[2] Մեր Սահառունեայն հասարակ է "Պատարագի" անուան հետ ըսել՝ "Տեառնն խաչական փրկութեան պատարագ, — Պատարագ գոհութեան, — Պատարագ օրհնութեան, — Հաղորդութիւն չարչարանաց յիշատակի. կենդանարար եւ ազատիչ մարմին եւ արիւն Աստուծոյ Որդւոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝. (Կ. Դպր. Գ.) "Ինքն — կը գրէ ուրիշ տեղ մ՚ալ — վասն մեր հաց եղեւ, եւ զարիւն իւր ըմպել ետ մեզ, զի զմարմինն ի մարմին խառնեսցէ. եւ զարիւն՝ յարիւն, զի զաստուածութիւնն՝ յոգիս մեր միացուցեալ՝ զմեզ ընդ Ս. Հոգւոյն. եւ ի վախճանի զմեզ բնակիչս աստուածութեանն արասցէ.... զանձն իւր ոչ խնայեաց դնել ի վերայ մեր. այլ կերակուր եւ ըմպելիս եւս եղեւ մեզ." (Դ. Դպր. Զ. էջ 92.)

Վերջապէս իրենն են գործեալ "դեղ կենաց, — տէրունական, սուրբ, աստուածական մարմին, — Հաց օրհնաց. Սրբութիւն օրհնաց. — "Օրէնքն ձայնը մասնաւոր հայկական առմամբ Ս. Հաղորդութիւն նշանակելով. (Անդ. ԺԽ էջ 123.) Մի եւ նոյն ատեն պարզապէս "Սրբութիւն" (առ գեղեցիկ առմամբ ցայսօր մինչեւ վերջին ատմիկը դեռ կը գործածէ մեր Ջ., sanctum) կամ "Սրբութիւնք" (sancta) անուանել զՍ. Հաղորդութիւն հասարակ էր 5դ դարուն կէսէն վեր եւ վար. ինչպէս հին հայկական կանոնաց մէջ կը տեսնենք.

*վրայ հանեցին, եւ անդիէն անհաւատ եղբայրն ալ մատրան մէջ ոտքի վրայ կեցած էր, քահանայն ելած կեցած էր վերը սուրբ սեղանոյն առջեւ, եւ դեռ պատարագը չմատուցած (չսրբագործած, յառաջ քան զԱռէք կերայք, եւն) ձեռուընները վեր վերցուցած դէպ ի սեղանին վրայ, սանկ կ'ըսէր.*

*«Տէր Աստուած զօրութեանց, որ արարեր զամենայն յոչընչէ եւ ստեղծեր զմարդ ի հողոյ կենդանի եւ անապականացու, եւ անցին զքոյով պատուիրանօքդ, եւ անկան ի մահ իւրեանց պատուիրանազանցութեամբն։ Դու արդ արդար դատաստանօք քովք մերժեցեր զնոսա ի դրախտէն փափկութեան յայս աշխարհ՝ ուստի ստեղծեր, եւ գլաւեյան լինել ընդ մահապարտութեամբ։»*

*Մինչեւ հոս հաւաքածոյ ըստ իմաստին քաղելէն ետքը՝ բառ առ բառ Ս. Բարսեղի պատարագէն յառաջ կը տանի։*

*«Սակայն ոչ թողեր ի ձեռանէ, բարերարդ Աստուած, այլ տեսչութեամբ եւ շնորհօք Միածնիդ քոյ վերստին ծննդեամբ նորոգեցեր զստեղծուածս քո, եւ բազում կերպարանօք այցելու եղեր արարածոց քոց։ Առաքեցեր զմարգարէս, արարեր զօրութիւնս ազգիազգի նշանս ի ձեռն սրբոց քոյ՝ որք յազգս ազգս իւրեանց հաճոյ եղեն առաջի քո. ետուր զօրէնս յօգնականութիւն, առաքեցեր հրեշտակս վերակացուս։ Իսկ իբրեւ եկն կատարած ժամանակաց, խօսեցար ընդ մեզ Միածնին Որդւովդ քո՝ որով զաշխարհս արարեր, որ է պատկեր փառաց քոց եւ կերպարանք էութեան քոյ, եւ կրէ զամենայն բանիւ զօրութեամբ, որ ոչ ինչ յափշտակեաց զէական Հօրն զընութեանն հաւասար պատիւ անձինն, այլ Աստուածն յաւիտենական ի յերկրի երեւեցաւ, ընդ մարդկան շրջեցաւ, ի սրբոյ Կուսէն մարմնացաւ, զկերպարանս ծառայի էառ, եւ եղեւ ի նմանութիւն տկարութեանս մերոյ, զի արասցէ զմեզ նմանակիցս փառաց իւրոց։*

*«Զի յամենայն գայթագղութեանց եւ յամենայն մոլորութենէ փրկեցեր զմեզ, եւ բարձեր յամենայն երկրէ զանյուսութիւն թերահաւատութեան, եւ ետուր զյուսոյ զհաւատս յարութեան ամենայն քոց արարածոց, որոց եւ զնմանութիւն պատկերի կերպարանաց քոց շնորհեցեր։ Դու հաւատովքն՝ զոր ետուր զօրանալ ի մարդիկ, զամենեսեան առ հասարակ միանգամայն կեցուցեր շնորհելով։ Զի ոչ եթէ վասն արդարութեանց ինչ մերոց, զի ոչ ինչ արարաք զբարիս ի վերայ երկրի, այլ վասն ողորմութեան եւ գթութեան քոյ՝ զոր սփռեցեր ի մեզ, համարձակիմք խնդրել ի սրտագիտէդ, որ քննես զսիրտս եւ զերիկամունս որդւոց մարդկան։ — Դու Տէր սրտագէտ յամենայնի, դու գիտես զճշմարտութեան զվաստակոց զառնս զայսորիկ զի խոտամբերութեամբ վարի ի վաստակոց իւրոց, եւ չեք հաւատք ի սմա։ Արդ յաւել ի սա հաւատս քան զհատ մանանխոյ, զի մի կորիցէ անձն սորա։ Հովիւ քաջ, որ ելերդ ի խնդիր ոչխարին կորուսելոյ, եւ եդիր զանձն քո ի վերայ խաշանց քոց, արդ եւ զսա*

*փրկեա ի Թերահաւատութենէս՝ յոր ըմբռնեալս է, զի մի յափշտակեսցէ Թշնամին զանձն սորա, եւ քո ստեղծուածս եւ նմանութիւն կերպարանաց յապականութիւն յաւիտենական կորստեան մատնեսցի:,,*

*Սանկ աղօթք կ'ընէր, կ'ըսէ քահանայն՝ պատարագը չմատուցած: Անկէ ետքը մատոյց կատարեց բոլոր պատարագամատոյցը: Երբ որ ըսաւ Հայր մեր որ յերկինս, ծունր դրաւ, եւ կ'աղօթէր երկար: Եւ երբ որ ինք ծունր դրած կ'աղօթէր, Թերահաւատ եղբայրը կը կենար ոտքի վրայ բեմէն վար. կը նայէր դէպ ի սեղանը:[1] Սկսաւ տեսնել մեծամեծ սքանչելիք բաց աչօք. վասն զի կը տեսնէր զՔրիստոս իջած սեղանոյն վրայ, եւ բացած էր իր կողմնական վէրքը՝ որով կողը խոցեցին գեղարդեամբ, եւ կողին վէրքէն արիւնը ցայտելով կը վազէր պատարագի բաժակին մէջ, որն որ սեղանոյն վրայ դրուած էր: Աս տեսնելով Թերահաւատ կրօնաւոր եղբայրը՝ զարհուրած, դողացած, խռոված, այլայլած գետին փռուած կը կենար բերանը բռնուած, Թալացեալ ոգեսպառ:*

*Ետքը քահանայն ոտք ելաւ կատարեց պատարագին սրբութեան գործը: Իջեցընելով Սրբութիւնը բեմէն, տեսաւ որ եղբայրը գետինն ինկած մնացած էր: Երբ որ տուաւ Սրբութիւնն որոնց որ պիտ'որ տար, եւ մնացորդները նորէն սեղանին վրայ բերաւ դրաւ, ետքն ինք անձամբ գնաց բռնեց եղբայրը. կը տեսնէր որ մնացած կծկած գետինն է. ջուր տուաւ բերնէն, մինչեւ վերջապէս շունչ առաւ, խելքը գլուխն եկաւ. կարգաւ պատմեց տեսած մեծ սքանչելիքը: Ետքէն սուրբ Հաղորդութենէն ուզեց տալ Քահանայն, բայց եղբայրը յանձն չառաւ, վասն զի ինք զինք անարժան կը գտնէր:*

*Հոր փորեց, եւ մէջը մտաւ, եօթը տարի իր Թերահաւատութեան մեղքին ապաշխարելու. եւ եօթը տարի ետքը արժանաւոր ապաշխարութիւն ըրած համարելով՝ կը հաղորդէր: Սակայն բոլոր կեանքը նոյն հորն իջած անցուց, մինչեւ որ նոյն հորին մէջ վախճանեցաւ եղբայրը: Ետքը նոյն երէցն ալ մեռաւ, եւ երկուքն ի միասին ան մատրան մէջ Թաղուեցան՝ ուր որ աս սքանչելիքն եղաւ, Նախիջեւանու եղբայրանոցին մէջ:[2]*

---

[1] Որն որ բանով մը իր աչքէն չէր խափանուած, ոչ դրամբ, ոչ վարագուրաւ, եւ ոչ ալ քահանային եւ պաշտօնէից սեղանոյն առջեւ կենալով, վասն զի կ'երեւայ Թէ ի ծունգս էին:

[2] "Եւ զայս աղօթս մատուցանէր երէցն յառաջ քան զմատուցանելն պատարագին: Եւ յետ այսորիկ մատոյց կատարեաց զպատարագամատոյցն զամենայն: Իբրեւ ասաց՝ Հայր մեր որ յերկինս, եդ ծունր եւ կայր յաղօթս յերկար: Եւ մինչ դեռ եդեալ էր նորա ծունր եւ կայր յաղօթս, եւ կայր եղբայրն Թերահաւատ ի յոտն ի խոնարհ ի բեմէն, նայէր ի սեղանն: Սկսաւ տեսանել մեծամեծ սքանչելիս աչօք բացօք իւրովք. քանզի տեսանէր զՔրիստոս, զի իջեալ կայր ի վերայ սեղանոյն, եւ բացեալ էր իւր զվէրսն ի կողմանէ, զոր ի կողն գեղարդեամբն խոցեցին. եւ ի վէրէ կողիցն արիւնն ցնցղկացեալ հոսէր ի բաժակ անդր պատարագին, որ եդեալ էր ի վերայ սեղանոյն: Իսկ իբրեւ ետես զայս եղբայրն Թերահաւատ կրօնաւորն, զարհուրեալ դողացեալ խռովեալ տագնապեալ յերկիր կործանեալ կայր ի բերանս հարեալ, պառեալ, Թալացեալ ոգին սպառեալ յինքենէ:

"Ապա երէցն յարուցեալ կատարեաց զգործ սրբութեան պատարագին: Իջուցեալ զսրբութիւն օրհնացն ի բեմբէն, ետես զեղբայրն, զի յերկիր կործանեալ Թալացեալ կայր: Իբրեւ ետ՝ ում տալ էր՝ զօրէնան, եւ եհան զմնացորդան ի սեղանն, ապա ինքն մատուցեալ բուռն հարկանէր զեղբօրէն, եւ տեսանէր զի նա Թալացեալ պակուցեալ կայր ի գետնին. ապա ջուր արկանէր ընդ բերանաւն, իսկ նա ուրեմն եբեր զոգի, եւ զգաստացեալ մատեաւ եկաց՝ պատմեաց զմեծամեծ սքանչելիսն՝ զոր ինչ ետեսն: Ապա

*Պատմուածին ստութիւնը կամ ճշմարտութիւնը փնտռել մեր առաջիկայ նպատակին չի վերաբերիր. մեզի բաւական է՝ որ աս ատեն — 5րդ դարուն առաջին տասնամեակները — Հայոց երկրին մէջ, ի Հայոց ասիկայ գրուած է։*

*Ըստ այսմ աս մեզի մեծագին Փաւստեան հատուածը կարեւոր կէտեր կը հաստատէ։*

*Նախ. Բարսեղեան բնագրին հայերէնին նկատմամբ սա ծառայութիւնն ունի՝ որ (անակնկալ կերպով) անոր հետ մի եւ նոյն թարգմանութիւն գտնուելով՝ աս թարգմանութեան բարձր թուական մը կու տայ, զորն որ մենք (ընէինք ալ) պիտ'որ չկարենայինք ստուգել, վասն զի իրեն բանասիրական նշաններուն ալ՝* 406 *էն գոնէ մինչեւ* 475 *պիտ'որ ծփայինք անորոշ։ Ա'լ ասով՝ չենք մինակ ձրի ենթադրեր, հապա կրնանք ստոյգ համարիլ՝ որ Նչօ+ Կեսարիոյ եկեղեցւոյն պատարագն է՝ զորն որ 5րդ դարուն ընթացքին մէջ յոյն դպրութեան հետեւող հայ եկեղեցականք կը գործածէին։*

*Երկրորդ. Բարսեղեան պատարագը նոյն իսկ 5րդ դարուն սկիզբները թարգմանուած ու գոնէ իբրեւ տիրող հայերէն պատարագ գործածուած է. որովհետեւ Փաւստոսի թարգմանիչը վերը յառաջ բերուած հատուածը կը թարգմանէ ճիշդ սոյն պատարագին հայերէն բնագրին համեմատ, զորն որ յիշողութեանը մէջ ունի, մինակ քանի մը տեղ իրեն հայ գրիչը զգալ տալով, այս ինքն իրեն սեպհական եղած հայերէնի մը աւելադրութիւնները* (pleonasme*ները*)*՝ որոնք շատ անգամ եւ ոչ քերականական լուծման տակ կրնան ձգուիլ։ Ուստի նոյն հատուածը յընդհանուրն Փաւստոսի թարգմանչին լեզուէն տարբեր հայերէն մը՝ եւ դարձեալ իրեն սեպհական հայերէնը՝ մի եւ նոյն ատեն կը ցուցընէ լուրջ եւ տրամաբանական հայերէնի մը մէջ՝ քանի մը աւելադրութիւն խառնելով. օրինակի աղագաւ՝ “Արարեր զօրութիւնս ազգիազգի„ ըսած է “Արարեր զօրութիւնս ազգիազգի նշանս։„ “Որ ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զլինել հաւասար Աստուծոյ„ ինք իր արտառոց ոճովը կը դարձընէ կ'ընէ՝ “Որ ոչ ինչ յափշտակեաց զէական Հօրն զընութեանն հաւասար պատիւ անձինն։„*

*Մ'նացածը գրեթէ բոլորն ալ բառ առ բառ կը քալէ. հազիւ մէկ կամ երկու նոյնանշան կը պատահի իրարմէ տարբեր։*

*Ան աստիճանի է լեզուի նոյնութիւնը՝ որ մեր Բարսեղեան պատարագին կասկածելի տեղերէն մէկ քանին ըստ այսմ կրնանք ուղղել։ Եթէ յիշողութենէ վերյիշեալ պատարագին՝ չի գրեր Փաւստոսի թարգմանիչը, ստուգիւ ուրիշ բան մը կրնար ընել աս խօսքերուն տեղ. — “Անցին զքոյովք պատուիրանօք„ կրնար ըլլալ “Անցին զպատուիրանօք քո„ կամ “զքոյովք հրամանօք։„ “Ոչ թողեր ի ձեռանէ,[1] բարերարդ Աստուած[2]„ (որն որ Բարսեղեան պատարագին մէջն ալ ճիշդ սանկ է,) կրնար ուրիշ շատ հայերէն բառ տալ։ Դարձեալ. “Իւրեանց պատուիրանազանցութեամբ„ կրնար ըլլալ՝ “Պատուիրանազանցութեամբ իւրեանց։„ Նոյն-*

---

**կամեցաւ տալ նմա երեցն ի որդւոթենէն անարօրինացն. իսկ եղբայրն չհաւանեալ չառնոյր յանձն, վասն զի անարժան համարէր զանձն իւր։ Այլ հօր հատեալ անձինն, ի ներքս իջեալ՝ զեւթն ամ տաղտկարեալ զթերահաւատութիւն մեղաց իւրոց, եւ յետ եւթն ամին ապա զանձն արժանի 'տաղտկարութեան համարէր՝ ելանել առնուլ. ընդ օրէնսն հաւատարել։ Սակայն ի նոյն հօր իջուցեալ զանձն իւր զամենայն աւուրս կենաց իւրոց, մինչեւ ի նմին հօր վախճանեցաւ եղբայրն։ Ապա եւ նոյն երէցն հանգեաւ, եւ ի միասին երկոքին եդան ի ներքս ի վկայանոցին՝ ուր սքանչելիք երեւեցան, յեղբայրանոցին Եպիփանու։„**

[1] Յն. ἀπεστράφης.

[2] Յն. պարզապէս ἀγαθέ.

պէս. "Արդար դատաստանօք քովք" կրնար ըլլալ "քոյովք արդար դատաստանօք." "Գրաւեցան լինել ընդ մահապարտութեամբ". եւ "բազում կերպարանօք (Ս. Գրոց մէջ "բազում օրինակօք" թարգմանուած է) այցելու եղեր արարածոց քոց" (կրնար նաեւ թարգմանուիլ "այց արարեր արարածոց քոց.") "Առաքեցեր հրեշտակս վերակացուս... կարգաւորած ժամանակաց" (Ս. Գրոց մէջ թարգմանուած է) կրնար "լրումն ժամանակաց" թարգմանուիլ, եւն։

Երրորդ. աս թարգմանութեան մէջ, բաղդատելով իր յոյն բնագրին հետ, տեսնուած յատկութիւնները՝ պիտ'որ ստուիպուէինք՝ ժամանակաւ եկած մտած աղաւաղութիւններ համարիլ։

Չորրորդ. հայ թարգմանութիւնը՝ հնութեան մասին երաշխաւորուած՝ ալ անկէ ետքը այնչափ տարակոյսներով արհամարհուած յոյն բնագրին նորէն իր արժանաւոր յարգը կը դարձընէ՝ նաեւ հայ լեզուի կամ անոր նրբագոյն մասնաւորութեանց անգէտ եղողներուն համար։ Բաւական է վերը նշանակուած ծանօթութեանց վրայէն աչք պտըտցընել՝ ըսածնիս ստուգելու համար, որոնց մէջ դէպքեր ալ կան՝ որ չէ թէ մինակ հիմակուան ունեցած Բարսղի հայերէն թարգմանութեան օրինակը կ'ուղղուի Փաւստեան հատուածէն, հապա նոյն իսկ յոյն բնագրին մէջ տեղի ունեցած ընդմիջարկութիններն երեւան կ'ելլեն։

Հինգերորդ. շատ կարեւորութիւն ունի սոյն (Փաւստեան) հատուածը՝ ըլլայ իբրեւ Փաւստոսի՝ ըլլայ իբրեւ թարգմանչէն գրչէն ելած, ծանկցելով զօրացնել շատ անգամ յիշուած հին հայերէն թարգմանութեան բնագրէն առնուած վկայութիւնը՝ ստուգելու համար հիմակուան յունական բնագիրը։ Արդէն նշանակեցինք որ աս մասին մէջ ամբողջ պարբերութիւն մ' ուրիշ պատարագէ առնուած՝ Բարսեղեանին մէջ դրուած է. եւ առ այս չէ թէ մինակ մեր հին թարգմանութիւնը՝ ինչպէս որ ձեռքերնիս ունինք՝ կ'երաշխաւորէ, հապա նաեւ սոյն Փաւստեան հատուածը։ Ցետեփեսեան խօսքեր՝ որոնք յունին մէջ կան, հաւասարապէս չեն տեսնուիր՝ ինչպէս մեր հին թարգմանութեան մատենին՝ նոյնպէս Հատուածիս մէջ։

---

## Բ.

## ՈՒՐՈՒԱԳԻՐ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ ՊԱՏԱՐԱԳԻ

(Ի Փ. Բիւզանդայ։)

Գլխաւորաբար Բարսղի պատարագին երեք այլեւայլ աղօթից մասունքը կը շօշափէ Փաւստեան Հատուածը։

1. Առաջին աղօթքը, "Տէր Աստուած, արարիչ մեր" եւն։

2. "Սուրբ, սուրբ, սուրբ ես արդարեւ" աղօթքէն մեծ մաս մը, ուր կրնայ մտնել նոյն աղօթքին մէկ մասնիկն ալ Փ. Բիւզանդեայ Գ. Դպր. Գ. գլխէն։

3. Խոստովանութեան աղօթքէն "Վասն այնորիկ, Տէր, եւ մեք ծառայպեալքս"։ Մասնիկ մ'ալ դարձեալ Ցիշատակաց մէջէն։

Սակայն Բարսղի պատարագէն անկախ՝ նուազ կարեւոր չէ Փաւստեայ աս գլուխը, նաեւ ըստ այնմ՝ որ պատարագի ուրուագրութիւն մը կ'ընծայէ, ինչպէս որ մեր Հայք ան դարուն ակիզբները կ'ընէին, որն որ այնչափ մեծի յարգի է՝ որչափ ստոյգ է թէ մեր ամէնէն հնագոյնն է. նշոյլ մը՝ խաւարի մէջ։

4. Աս պատարագն որ հոս կը ստորագրէ մեր Սահակունին՝ գրեթէ մեր Ընծ— պատարագն է (չէ թէ հանդիսաւորը), վասն զի արդէն թիւ պատարա-

*գաց ծագումն ալ՝ կամ յաճախութիւնը գլխաւորաբար վանքերէ յառաջ եկած է։**

5. *Պատարագ մատուցուած օր*[1] *մըն էր, կ'ըսէ Մամբրէ եղած դէպքին պատմութիւնը, վասն զի ամէն օր պատարագի սահմանուած չէր։*[2] *Սակայն* 5ᵉ *դարուն մէջ հանապազօրեայ հաղորդութիւնը, ուստի եւ պատարագը, նաեւ Հայոց մէջ ստէպ ակնարկուած է։*[3]

6. *Մատուռ մըն էր պատարագը կատարուած տեղը,* — μαρτύριον, *վկայարան — մարտիրոս կամ գոնէ խոստովանող եղած Սրբոյ մը յանուն շինուած։*[4]

7. *Կ'երեւայ՝ որ սարկաւագ կամ սարկաւագունք չկային, վասն զի եղբայրանոցի (ժողովրդական եղբարց* = laicorum) *մատուռ մըն է, ուր կանոնեալ կղեր չէր կրնար ըլլալ։*

8. *Պատարագին սկզբնաւորութիւնը կ'ըլլայ՝ հացին եւ գինւոյն սեղան հանուելովը։ Հայք աս ատեններս արդէն ունէին ասորի “Առաքելական Կանոնաց„ թարգմանութիւնը, որոնց (ըստ Հայ թարգմանութեան թուոյն)* 32*երորդը՝ կը պատուիրէ՝ որ “Հաց պատարագին յորում աւուր եփեսցի՝ ի նմին աւուր ելցէ ի սեղանն, եւ մի՛ լիցի իշխանութիւն զկնի աւուրց հանել, զի եւ Մովսէս ոչ պակասեցուցանէր զհացն ջերմ՝ յերեսաց Տեառն։„ Դժուարաւ կրնանք մտածել՝ որ աս միջոցին մեր երիցուն պատարագին “պատարագիք„ բերուէին աղքատ եւ անինչ կրօնաւորներէն։ Արդ պատարագին կամ խորհրդականաց ուրիշ սկզբնաւորութիւն չի գիտեր աս ուրիշ տեղեր “ի ձուլոյ„ սկսող Սահառունին, բայց եթէ հացին ու գինւոյն սեղան հանուելէն, այս ինքն ան տեղէն՝ ուր (ինչպէս վերը տեսանք,) սարկաւագը — եթէ կայ՝ — կ'ըսէ. “Մի ոք յերախայից„ եւն. (սակայն աս մատրան մէջ դժուարաւ կրնային երախայք ըլլալ,) եւ քահանայն կ'ըսէ. “Տէր Աստուած պարիչ մեր„ եւն։*

— *Պատարագի հանդիսապէս սահմանուած հացին ու գինւոյն “յարգութիւն„ մը կ'ընծայուի, սակայն բացայայտ նշանակուելով՝ անոնց ետքէն “մարմին*

---

* “Ի ժամանակին յորում մեծ քահանայապետն Վրթանէս երթեալ շրջէր առաձձիաձ ուսկաոռոք կատարել զպատարագն օրհնութեան, . . „ եւ այլն: Բուզ. Գ. Դպր. գ. էջ 7:

[1] “Իսկ եղեւ օր մի յաւուրց՝ իբրեւ կատարէին անդ զխորհուրդ Գոհութեան պատարագին։„ Անդ։

[2] Ա. Բարս. առ Կեսար. Պատրիկ. ամէն օր հաղորդուիլը գովելէն ետքը՝ կ'ըսէ. չորս անգամ շաբաթը՝ կը հաղորդուինք. կիւրակէ, չորեքշաբթի, ուրբաթ, եւ շաբաթ. նաեւ ուրիշ օրեր՝ եթէ վկայի մը յիշատակ կը կատարուի։

[3] “Կատարէր անդ ըստ հանապազ սովորութեան,, եւն Բուզ. էջ 7։ — Եղիշէ, Մեկն. աղօթից “Հայր մեր, որ յերկինս„ (տպ. Վենետ. մանուանդ էջ 203—4)։

[4] Աս ժամանակ հասարակ էր Հայաստան Սրբոց մարմինը սեղանին տակ զետեղած ունենալ. (տես Կորիւն, Վարք Մեսր.) “Մարտիրոս„ անունը ատենին փոքրկութեան նշանակիչ չէր. ինչպէս մեր օրերը կ'առնուի. հապա, ինչպէս ըսինք, մարտիրոսի մը յանուն ըլլալուն յայտաբար։ Տաճարաց՝ մեր հիները բաց ի եկեղեցւոյ անունէ՝ կը սիրէին անուն տալ “Տուն Աստուծոյ„ (Ղ. Փարպ.) “Տուն աղօթից„ յունական εὐχτήριον եւ προσευχλήριον (= աղօթարան) անուանց համեմատ. (Փ. Բուզ. Գ. Դպր. Գ. գլ. էջ 7, տող 22). մարգարէի մը անուան նուիրածը՝ կ'ըսուէր “Մարգարէարան„ (= յունական προφητήριον). Առաքելոյ մը նուիրածը “Առաքելարան„ (= ἀποστολίον). ինչպէս վկայի մը նուիրածը՝ “Վկայարան„ կամ “Վկայանոց„ (= μαρτύριον Փ. Բուզ. նոյն տեղը, տող 26, 27, 28)։ Մամբրէ “Վկայարան„ էր՝ չենք գիտեր որ վկային։ Անսովոր դարձուածով մը Յունաց μαρτύριονը “մատուռն„ են ըսած մեր Հարք, ինչպէս ἐκκλησία անունը՝ “եկեղեցի„։ Մատուռնք փոքր կ'ըլլային քան կաթուղիկէք. սակայն, ինչպէս աս պատմութեան մէջ ալ կը տեսնենք, իրենց չէ պակսիր ի Հայս բեմ, եւ բարձր բեմ։

— “Աղօթարանի„ տեղ Ագաթ. “Պաշտօնարան„ կ'ըսէ։

*եւ ալլուն ըմպելեքը.„ անանկ որ՝ չէ թէ միայն աս առաջին աղօթքով, Հապա Նախերգանքէն ետքն ալ, Նրբերգութեանէն եւ անոր յաջորդող Կանոնին աղօթքէն ետքն ալ, դեռ “պատարագի մատուցումն„ եղած չէ, ինչպէս կրկին անգամ կը նշանակուի։ Ուստի տարակոյս չկայ՝ որ պատարագի սահմանուած հացն ու գինին յարգութիւն մը նաեւ ան ատեն կ'առնուր, բայց ոչ ան յարգութիւնը կամ պաշտօնը՝ որ միայն լիական մարմնոյն եւ արեան կը վերաբերի։*

9. *Մամբրէի մատյան երէցը Կանոնին աղօթքը, ինչպէս մենք այսօր, կանգուն կեցած՝ ձեռուըները դէպ ի սեղանին վրայ տարածած կ'ընէ, իբրեւ թէ գրգալով Նուիրաց վրայ։ Ասանկ էր Ասորւոց դասական բացատրութիւնը նկատմամբ Խորհրդոյս փոխարկութեան՝ զօրութեամբ Հոգւոյն սրբոյ։*[1]

10. *Մեր հին հայ մատենագիրը՝ պատարագին ան մասը, որ է Քրիստոսի խօսքերէն (սրբագործութենէն) մինչեւ Տէրունական աղօթքը (արտաքսարար), մասնաւոր նշանակութեամբ մը կ'անուանէ “Պատարագամատոյց„ կամ “Մատուցումն պատարագի։„*[2]

11. *“Յիշատակաց„ մասին, ինչպէս ուրիշ տեղ մը կը յիշէ մեր Սահառունին, հին եկեղեցական օրէնք մըն էր՝ որ որոնք իրենց կեանքը բարբարոսաց դէմ պատերազմելով կորսնցուցին ի պաշտպանութիւն եկեղեցւոյ, մարտիրոսաց (անոնց նշխարացը), սուրբ սպասուց, քահանայութեան, եւ վերջապէս երկրին անկրօնից ձեռքէն ազատ պահելու համար, այնպիսիներուն պատարագի մէջ յիշատակն ըլլայ տարւէ տարի (իրենց մահուան օրը) սրբոյ սեղանոյն առջեւ ի ժամ պատարագին. այս ինքն երբ որ սրբոց անունները մէկիկ մէկիկ յիշուին, ետքէն ասոնցն ալ յիշուի։*[3]

---

[1] Տես Ս. Եփր. Ճառ. ի վկայսն Արեւելից (տպ. Եփրեմ. Վենետ. 1836, Հատ. Դ էջ 150։) *Այս ճառը ստուգութեամբ Եփրեմայ կ'ընծայուի. բուն հեղինակն է Մարութաս, որուն երկմասնեայ գրութեան մէկ կտորն է: ՀՐՏՐ.*

[2] Վերոյիշեալ աղօթքէն ետքը ուրիշ բան չէր մնար, բայց եթէ սրբագործութեան մասը՝ զորն որ ըսաւ կատարեց քահանայն մինչեւ Յիշատակաց վերջը. աս մասն է զոր Սահառունին ի մասնաւորի “պատարագամատոյց„ կամ “մատուցանել (մատուցումն) պատարագի„ (προσφορά կամ ἀναφορά) կ'անուանէ։

[3] Ահաւասիկ Դէպտիկ(ոն) կամ “Բնոփէրէ՛„ “Սրբոց մասին, ուր յայտնապէս յանուանէ յիշատակելով Սրբոց շարք մը կ'ակնարկուի։ Կ'ըսէ Փ. Բիւզ. (Գ. Դպր. ԺԱ.) “Ցորժամ շարունակ Սրբոց կարգեցին։„ — Ղ. Փարպ. (էջ 15, հին տպ.) “(Ազան Արծրունի) եղեւ ի մասրանն յԱգամանկերտ, որոյ յիշատակարանն ընդ անուանս վկայից սրբոց գրեալ տարեկան մինչեւ ցայսօր եւ յաւիտեանս՝ անուն սրբոյն յամենայն եկեղեցիս Հայաստանեայց աշխարհի, Վրաց եւ Աղուանից։„ — Եղիշէ, (Պատմ. Վարդան. էջ 361.) “Բնոփէրոս յիշատակեցան նոքա (նախարարքն գերեալք եւ կապեալք) եւ ոչ մի տօնք տարեկանաց ոչ անդին գնաստ ի հեռաստանէ։„ Վասակայ համար կ'ըսէ Եղիշէ. (Պատմ. Վարդան. էջ 248.) “Ոչ յիշեցաւ անուն նորա ի մէջ սրբոց եւ ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն։„ Կը յաջորդէին վախճանելոց՝ եւ կենդանեաց “Յիշատակք։„ որոնց համար ալ պատարագը կը խնդրուէր։

Ասոնց համար որոշումներ ունին Հայաստանի աս ատենուան Կանոնք։ Չէր կրնար ամենուն համար անխտիր պատարագ մատչիլ, եւ ոչ յորմէ եւ իցէ ումեքէ մատուցուած պատարագներն ընդունուիլ։ Շահապիվանու ժողովոյն (447ին) մէկ Կանոնը, օրինակի աղագաւ, թոյլ չի տար որ մեռելի վրայ այնչափ խօսիւ (բանադրանօք) արգելեալ հանդիսակոծը դնել տուողներուն հոգւոյն համար քահանայք պատարագ մատուցանեն. իսկ եթէ վախճանեալը պատուիրած էր կոծ չդնել, բայց ազգականք դրին, ան ատեն քահանայք իրենց կողմանէ վախճանելոյն համար պատարագ մատուցանեն, բայց ան ազգականաց բերած պատարագները չընդունին, մանաւանդ թէ զասոնք դուրս ընեն տաճարէն։ Նոյնպէս է եւ ուրիշ հին Կանոնաց 36երորդը։ Այսպէս անձնասպանի կամ ինք իրեն մահուան պատճառ եղողին պատարագ չէր մատչէր, եւ արուած պատարագներ հարկաւ կը մերժուէր,

12. *Տէրունական աղօթքին նկատմամբ, զորն որ պատարագին երկրորդ մասին — Հաղորդութեան — կը վերաբերէ մեր Հայ մատենագիրը, մանաւոր մտադրութեան արժանի է՝ որ ինք երէցն է որ կ՚ըսէ՝ "Հայր մեր, որ յերկինս," որն որ մեր հիմակուան սովորութեան մէջ անհետ եղած է։ Յունական սովորութիւնը, թէ՛ հին թէ՛ նոր, բովանդակ աղօթքը ժողովրդեան կը թողու։ Հոս, ինչպէս կը տեսնենք, նաեւ յունական պատարագամատոյց գործածող Հայք Ասորւոց համեմատ կ՚ընթանան, որոնք (գոնէ քանի մը պատարագներուն մէջ) ցայսօր՝ Մամբրէի Ողբալլանոյին մէջ եղածին պէս կ՚ընեն. ժողովուրդը՝ "Աւուբէ էղէյի ոնոն +ո" խօսքէն կ՚առնու շարունակել։[1] Այսպէս յարատեւած են մեր Հայք շատ երկայն ատեն, մինչեւ որ յոյն սովորութիւնն անանկ յաղթած է՝ որ ալ անյիշատակ լռած է իրենց սովորութիւնը, որն որ յունականին եւ հռոմէականին զոգցես միջին մըն է։[2]*

13. *"Հայր մեր, որ յերկինս" ըսելուն կամ ամբողջ Տէրունական աղօթքին կը յաջորդէ անմիջապէս՝ որ երէցը ծունր դրած կ՚աղօթէ, եւ՝ աս դրից մէջ՝ "յերկար"։ Հիմակուան յունական պատարագը, ինչպէս նաեւ հիմակուան հայկականը, (եթէ Կաթողիկեայց կիրառութիւնն ի բաց առնունք), ոչինչ ծնրադրութիւն գիտեն քահանային համար։ Ծանօթ է անշուշտ արդէն Յունաց*

---

(Նոյն կանոնաց մէջ 11, 28, 29, 71)։ Անտարակոյս նաեւ ան տեսնները կ՚արժէր աս ընդհանուր սկիզբը՝ զորն որ քիչ մը անագանագոյն նոյն դարուն մէջ հաստատուած կը տեսնենք (18երորդ կան. Հետեւողաց Ասոր.) թէ "Որ ոչն իցեն արժանի ճաշակել ի խորհրդական սեղանոյն՝ եւ մի՛ զպատարագիսն բերելոյ արտաքսեալ՝ մի՛ իշխեսցին ընձեռել։"

Նա մանաւանդ՝ չէ թէ միայն անձին, հապա նաեւ ուրացողի մը (օրինակի աղագաւ՝ քրիստոնէութիւնը թող տալով մոգ եղողին, պարսկական դէնն ընդունողին) կինը. թէպէտ ի քրիստոնէութեան հաստատուն մնար, չէր ընդունուեր ի հաղորդութիւն խորհրդոյն. զինք եւ իրեն այրը՝ մի մարմին համարելով՝ եթէ յարատեւած էր երկանը հետ ապրելու։ Այսպէս ըստ հին երկիւղածութեան. որուն մէկ օրինակը Յուստինոսի վկայի (Բ. Պատասխանատուութեան մէջ) կը կարդանք։ Ըստ այսմ Սուրբն Շուշանիկ (տես անոր Վկայաբանութիւնը) կը հրաժարէր չուզեր ապրիլ իւր երկան՝ Վազգենի Վրաց բդեշխին հետ՝ որն որ մոգ եղած (պարսիկ դէնն առած) էր. (էջ 20 եւ 22) "Հաստատուն կացից զօրութեամբ եւ շնորհիւ Տեառն. եւ ընդ ուրացողին ոչ միաւորեցայց եւ պղծեցայց։ — — Լուր առաքելական խրատուն՝ — Ելէք ի միջոյ նոցա" եւն։ Այսպէս վերայիշեալ հին Հայ կանոնաց եւ որոշմանց 83երորդը։ Նախարարք ալ Ղազարայ (էջ 85 հին տպ.) կ՚ըսեն Սրբոյն Սահակայ. իրենց թագաւորին վրայ տրտնջելով. "Այլ եւ մեծի պատուական եւ երկնաւոր խոր- հրդոյն հաղորդել ոչ կարեմք ի խղճէ մտաց՝ զօր ամենայն տեսանելով զայսպիսի պղծագործութիւն. քանզի ուսեալ եմք ի քէն եւ ի քո նախնեացն վարդապետութենէ՝ թէ ոչ միայն որ գործենն՝ պարտական են, այլ եւ որ յանձն առնուն։" (Հռոմ. Ա. 32։) Սակայն միջնագոյն կը հնչէ վերոյիշեալ Կանոնաց 20երորդը՝ որն որ թոյլ կու տայ "կնոջն մերձենալ ի սրբութիւնն յառաջ քան զանձն ապաշխարել։"

Վերջապէս 5ր դարուն կէսերը յուզուած խնդիրներէն մէկն էր թէ կրնա՞յ քրիստոնէի դիւահարի հաղորդութիւն տրուիլ։ Կանոնաց որոշումը (81երորդ՝) բացասական էր. բայց աս յաւելուածով միայն որ "եթէ ի վարս գնասցէ իւրոց առաքինի իցէ եւ վախճանիցի. պարտ է առնել զյիշատակն։" Ոչինչ կարի հեռի աս ժամանակէն՝ խնդիր մըն էր թէ արդեօք ան երախայից վրայ՝ որոնք վարուք առաքինիք՝ մեռան, չկրնալով մկրտուիլ, կրնա՞յ անոնց համար պատարագ ըլլալ՝ Աստ կը պատասխանուէր թէ "Յայսպիսեացդ անուն ոչ է արժան պատարագ մատուցանել, քանզի ի կենդանութեանն իւրեանց ոչ եղեն արժանի կենարար շնորհին." (Մկրտութեան)։ Եղիշէ, Վասն յիշատակաց մեռելոց։

[1] Այսպէս է Առաքելոց՝ այս ինքն Ադդէի եւ Մարիի ըսուած պատարագին մէջ ալ. եւ ուրիշ՝ Ռընոյի քով եղած բազմաթիւ պատարագներուն մէջ։

[2] Տես վարը՝ Ի. Ծան. 2։

անձահ պարծիլը՝ թէ իրենց գլխով խոնարհումը այնչափ գերազանց ըլլայ քան զծնրադրութիւն՝ որչափ գլուխ քան զծունկս:[1] Տարակոյս չկայ՝ որ մեր եկեղեցին հետ բոլոր ժողովուրդն ալ կամ բոլոր եղբարք ի ծունգս էին մի վկայանոցին մէջ, միայն թերահաւատ եղբայրը՝ կ'երեւայ թէ "կայր," իբրեւ այսպիսի՝ "ոտքի վրայ կը կենայ:" Այս եւ նոյն տեղ Ս. Բարսղի պատարագին մէջ, ինչպէս մեկալ մեր պատարագներուն մէջ ալ, "զգլուխ խոնարհեցուցանելոյ" աղօթքը կը տեսնենք: Սակայն կ'երեւայ թէ դեռ մեր Հայք ան ատեն, որչափ մեր մատենագրէն կ'իմանանք, աս յունական պատարագը չառած, ունեցած սովորութիւննին կը շարունակեն, այս ինքն դեռ [illegible] եւ [illegible] [illegible] ըլլալու աղօթք մըն է հոս յիշուած աղօթքը՝ թէ՛ քահանային եւ թէ՛ ժողովրդեան կողմանէ. այնպէս որ ի վախճանի երէցն ոտք ելլէ եւ փառաւորութեամբ կնքէ: Աստ տեղ Եղիշէն որոշ աղօթքի ձեւեր եկան, զոր արդէն Ս. Բարսղի քով կը տեսնենք, ուր որ՝ Առաքելական Սահմանադրութեանց պատարագին դեռ աւանդ ձեւ մը կը պակսի: Հնոց (միանձանց, եւ հասարակութեանց ի մասնաւորի) աս [illegible] ծնրադրութեամբ[2] եւ լռութեամբ աղօթելը սովորական կը ցուցընեն՝ ի մէջ այլոց օրինակաց՝ սա խօսքերը. "Ցերկարելով զձայնաւոր պաշտօնն, ծունր դնեն ամենեքեան, կան յաղօթս լռութեամբ, եւ ի ձեռն առաջնորդի աղօթիցն կանգնեալք ամենեքին զփառաւորութիւնն կատարեն:"[3]

14. Երէցը նորէն ոտք կ'ելլէ՝ "կատարելու" չէ թէ պատարագը (վասն զի կատարած էր բոլոր պատարագամատոյցը), հապա "զգործ սրբութեան պատարագին:" Աս բացատրութեամբ ակնարկուած գործողութիւնք ի՞նչ կրնան ըլլալ, եթէ ոչ Ցունացմէ τελείωσις (կատարումն) ըսուածը, այս ինքն երբ որ սրբազան մարմնոյն մէկ մասը արեան մէջ կը ձգուի կամ անով կը կնքուի:[4] "Գործ սրբութեան" ասութիւնը կ'երեւայ որ մասնաւոր կերպով պատարագին աս մասը նշանակէ, ինչպէս երբեմն առ Լատինս Consecratio ձայնը:[5]

15. Ինք ճաշակելէն ետքը՝ անձամբ զսուրբ Հաղորդութիւնը՝ "զսրբութիւն օրինացն" բեմէն վար կ'իջեցընէ, եւ ինք դարձեալ քիչ մը ետքը ստիպուած է մարած եղբայրն անանկ թողուլ, որպէս զի մնացորդը վեր հանէ. որմէ կը տեսնենք թէ սարկաւագ չկայ ի Խորհրդեան, որուն՝ ըստ հին հայկական սովորութեան եւ Կանոնաց՝ "իշխանութիւն էր հանել ի սեղանն եւ իջուցանել:" Սակայն Հաղորդութիւն [illegible] նկատմամբ, եթէ սարկաւագ ալ ըլլայ, աս ատենները Հայաստանի մէջ մեծապէս վիճուած նիւթ մըն էր. վասն զի իբրեւ զեղծում մը Նիկիական Ժողովոյ Կանոնաց հին հայկական յաւելուածը (Կան. ԺԸ.) խստիւ կ'արգելու. "Ի տեղիս տեղիս սարկաւագունք օրէնս տան. . . . ընդդէմ թուեցաւ գործն՝ առաքելական Կանոնաց. — — որք ոչ ունին իշխա-

---

[1] Աս աւթիւ մէջ յայտնի է որ ծունկերու հետ գլուխն ալ, պարանոցն ալ կը խոնարհի: Սուտ-Դիոնեսիոս Արիսպ. (Ցղղո. եկեղեց. քհնյապետութեան.) "Քահանայից երկոքումբք ոտից ծնրադրութիւնքն՝ վեհագոյն քան զպաշտօնականին զորդու միով ոտամբն կրկնելն:"

[2] Չէ թէ արդի Ցունաց պէս իջնել ելլելով: — Առաք. Սահմանադրութեանց Ը գրքին պատարագին սարկաւագը՝ Ὅσοι πιστοὶ κλίνωμεν γόνυ (ծունր դիցուք) ըսելէն ետքը՝ հազիւ շատ երկայն աղօթքներէն ետեւ կ'ըսէ ἐγειρώμεθα (յոտն կացցուք:) Համմտ. լատ. Flectamus genua եւ Levate.

[3] Եղիշէ, Խրատք միանձ. էջ 161: Տես նաեւ Ղ. Փարպ. հին տպ. էջ 106—154:

[4] Համմտ. այսօրուան ալ պատարագի "Լրումն (= πλεῖρωμα) Հոգւոյն սրբոյ," խօսքը:

[5] Թուղթ Ս. Գրիգ. Հռ. Քահանայապետի. առ Պատրիկիոս Սիրակուսացի:

*նութիւն մատուցանել պատարագ, զի՞արդ համարձակ լիցի զմարմինն Քրիստոսի բաշխել. այլ որք մատուցանենն պատարագ՝ նոքին եւ բաշխեսցեն։„*

*Բեմէն վար կ'իջեցընէ, վասն զի եղբայք՝ իբրեւ ժողովրդականք՝* (λαικοί,) *չէին կրնար վեր ելլել սեղանէն հաղորդուելու՝ ան ատենուան արդէն Հայաստանեայց քով արժող Լաւոդիկեան Կանոնաց համեմատ, որ յունական Կանոնաց հաւաքման մէջ կը տեսնուէր։*

*Ուրիշ կէտ մը գրեթէ աս ատեններ Հայաստանի մէջ հակառակութիւն կրած, բայց վերջապէս իբրեւ ապօրինաւոր արգիլուած էր, որ կէս-սարկաւագները, այս ինքն "ի սուրբ կարգի„ կամ ինչպէս մերինները կ'ըսէին "յատիճանին„ չեղողները, բեմ ելլելով չհաղորդուին, որ մինակ քահանայից եւ սարկաւագաց սրժան է։*[1]

16. *Մամբրէի երէցը բեմին ծայրը չէ նստէր, եւ ոչ հաղորդուողները կու գան կանգուն կեցած կ'առնուն. հապա անշուշտ ուրիշ խոնարհական դիրից մէջ էին, երբ որ երէցը կու տայ իրենց (ձեռքը՝)*[2] *աստուածային հացը, եւ բաժակէն կը խմցընէր, ինչպէս կ'ենթադրուի։*[3]

17. *"Մնացորդք„ (Առաք. Սհմդր. պատարագին* τὰ περισσεύσαντα *բաժնը) սեղանին վրայ կը բերուին կը դրուին, անշուշտ պահուելու համար։*

---

*Շատերուն զարմանք պատճառած է թէ ինչպէս մեծ ընդարձակ Արեւելքին մէջ՝ ուր սրբազան Խորհուրդն ուրիշ հացով չի կատարուիր՝ բայց եթէ խմորեալ հացով, միայն Հայք բաղարջով կ'ընեն։ Անոնք որ աս սովորութեան հնութեանը չեն կրցած տարակուսիլ, ազգայինք եւ քիչ շատ իրենց իրաց յաջորդութիւններուն տեղեակք, ենթադրութեան մը դիմած են. այս ինքն թէ Հայաստանի քրիստոնէութեան սկիզբը Լուսաւորչէն աւանդ կարգադրուած ըլլայ։ Կրնայ աս այսպէս մտածուիլ, բայց ոչ միանգամայն ապացուցուիլ։ Ասոր մէկալ ծայրն է ուրիշ կարծիք մը, յունական հոգւոյ ծնունդ, թէ Հայք "Քրիստոսի միոյ բնութեան„ մոլորութիւնն (աս ալ՝ ըստ Անապականականաց) ընդունելով՝ առ այս բացայայտութիւն՝ խմորը պատարագի հացէն հանած ըլլան (ինչպէս՝ ջուրն ալ բաժակէն)։ Չկայ ամենեւին վաւերական ապացոյց մը աս կարծեաց համար մեր եկեղեցական գրութեանց եւ դիպաց ընթացքին մէջ՝ ոչ ուղղակի եւ ոչ անուղղակի։ Տրուղեան Հայք ալ՝ դեռ 692ին, աւանդ բան մը չեն գիտեր Հայոց վրայ. թէպէտ ձեռնարկած են անոնց ծուռ բաները շիտկելու։*

*Ցայս վայր դիտելով մեր 5րդ դարու առաջին կիսոյն պատարագը եւ անոր քանի մը մասնաւորութիւնները՝ որոնք բաւական երկայն տարիներով Ասորւոց համաձայն գործածուած աստուածային պաշտամանց ունակութիւնք կամ սովորութիւնք են, կ'ըսենք թէ Հայք աս բաղարջ հացի կիրառութեան մասին՝ Յունաց նայելով՝ բացառութիւն մըն են յԱրեւելս, սակայն ոչ երբեք Եփրատէն անդին ոչ-յունական արեւելեայց նայելով՝ ան ատեն։ Վասն զի ալ հիմա*

---

[1] Լաւոդ. ԺԹ. կանոնին հայկական մասը, երկրորդ թարգմանութեան մէջ։

[2] Եղիշէ, յաղօթան որ առէ Հայր մեր որ յերկինս. "Ի մահկանացու ձեռս անմահ հաց եղեալ՝ անդէն փոփոխակի եւ ձեռքն անմահացան. եւ ուտելով զնա՝ բոլորովին մարդն շնչով եւ հոգւով եւ մարմնով հոգեւորեալ եւ բաժանակից եղեւ Քրիստոսի։„

[3] Ինչպէս կը լսենք անճահ սովորութիւն մը կայ տեղ տեղ ոչ-կաթուղիկեայ Հայոց քով՝ բեմին ծայրը նստած Ս. Հաղորդութիւն բաշխելու՝ կանգուն կենալով ընդունողաց։

ծանօթ բան է՝ որ Ասորիք լոկ 7րդ դարուն թողուցին իրենց բաղարջը։ Ասորւոց մէկ մասը՝ որոնց պատմութիւնը Յակոբիկ Ասորւոց հետ զուգընթաց չէ, պահած է իրենց նախնական աւանդութիւնը. զորն որ կանուխ՝ ի քարոզութենէ Առաքելոյ ունեցած է աս ցեղին բնակած երկիրը։ Ուստի Հայք եւ Մարոնեան Ասորիք աս մասին եկեղեցական աւանդութեան մէկ մեծ մասինոյն վկայք կը հանդիսանան։ Ինչո՞ւ Ասորիք միաբնեայք (Յակոբիկք) փոխեցին իրենց սովորութիւնը։ Ասոր մէկ հաւանական պատճառ մը Անապականականաց դէմ ունեցած չարաչար վէճը կ'երեւայ, որուն նկատմամբ քանի մը նոր յիշատակարանք ձեռքերնիս ունեցանք, որոնց վրայ ուրիշ անգամ։ Ճիշդ ինչ բանի համար որ Յակոբիկք կրնային փոխել, նոյնին համար պէտք էին իրենց բաղարջը պահել Հայք իբրեւ Անապականականք։

Ցայս վայր նշանակուածներէն բաւական շօշափելի կ'ըլլայ որ 5րդ դարուն սկիզբները Հայաստան յունական պատարագի բնագիրն ընդունելով ալ՝ ցայն վայր մնացած սպարողութիւնները գոնէ ի սպառ չթողուց, հապա գոնէ ինչ ինչ պահեց ան սովորութիւններէն՝ որոնք չէ թէ միայն մերձաւոր ժամանակներու մէջ՝ որ մինակ ասորի լեզուաւ կամ դպրերով կ'ըլլային եկեղեցւոյ պաշտամունք, այլ նաեւ բոլոր 4րդ դարուն մէջ գործածական էին՝ գոնէ տեղ տեղ։ Ասոնք, ինչպէս բնական է, ասկէ ետքն ալ ոչ այնքան քիչ տարենուան մէջ եղան ընդհանուր անգործածական, հապա տակաւ՝ եւ բաւական ժամանակ անցնելով տեղի տուին ուրիշ սովորութեանց։[1]

Կրնա՞նք արդեօք մեր Սահառունին թող տուած առեն՝ անոր ի պատմագրութեան նախորդէն (Ագաթանգեղեայ) քով, եթէ ոչ պատարագի արարողութեանց նկատմամբ՝ գոնէ անոր բնագրին կամ աղօթից նշմարը գտնել։ Ահա պատարագի մը կանոնին վրայ յօրինուած խօսքեր՝ որոնք իբր թէ ի Ս. Գրիգորէ Հայոց Լուսաւորչէ ըսուած աղօթքի մը մէջ են։[2]

“Գոհանամ զքէն, Տէր, որ արժանի արարեր զանարժանութիւնս իմ քոյոյ պարգեւիդ. զի ի սկզբանէ իսկ սիրեցեր զստեղծուածս ձեռաց քոց, եւ ետուր զփափկութիւն անաշխատ հանգստեան դրախտին վայելչութեան, անմահս, անցաւս, կենաց վիճակացն ուրախութեան պատրաստեցեր, եթէ կացեալ էաք ի պատուիրանին՝ զոր ետուր ի ծառոյն չճաշակելոյ ... իբրեւ ոչ եթէ ծառն անուանեալ կենաց կարէր տալ կենդանութիւն առանց քոյոյ բանիդ հրամանի կամացդ բարերարութեան, որ է կամք քո եւ բանդ եւ բարերարութիւնդ՝ Միածին Որդիդ ծնունդ աստուածութեան քոյ, եւ Հոգիդ սուրբ որ ի քէն բղխէ եւ ընդ ամենայն տիեզերս, որ է ընդ քեզ եւ ընդ Միածնիդ յէութեանդ քում։ — — (Ըսուածներուն կրկնութեամբը՝) “Զի եթէ կացեալ էաք ի պատուիրանիդ քում, Տէր, եւ պահեալ էր զպատուիրանս զոր ետուր վասն լաւութեան հանդերձի փորձութեան մերոյ, շնորհեալ լինէր քո մեզ զկեանս անցաւս, անաշխատս, անբիծս, անհոգս, եւ անսպառս, առանց ծերանալոյ. եւ յետ սերելոյն

[1] Աս նիւթիս նկատմամբ տես վերն ալ, էջ 64։

[2] Ագաթ. Է. էջ 61. տպ. Վենետ. 1835։

ու. բազմանալոյն, որ պատուիրեցեր կեալ մարմնաւորապէս անամօթ փառօքն զգեցեալ իբրեւ հանդերձիւ ի դրախտին քում, յոր եդիր զմեզ . . . զմեզ յետ ի դրախտին վայելից եւ յետ երկրաւոր կարգացս յանմահութիւն փոխեալ լինէր . . . ի կարգս հրեշտակաց: . . . Իսկ իբրեւ ետես թշնամին զմեզ պատուեալս ի մարդասիրութենէն կամարար կամաց քոյ, նախանձեալ ընդ պատիւ թագի պարծանաց մերոց՝ պատուէն որ եառուր ի քէն, զի ասացեր եթէ Ի նմանութիւն պատկերի կերպարանաց իմոց արարի ես զմարդն, . . . . հրապոյրք ցոփացուցիչք մտին յաշխարհ եւ արկին զմարդիկ ի կենաց եւ ի հանգստեանց՝ զոր դու առ քո բարերարութեանդ շնորհեցեր մարդկան որ կորուսին զայն:

“Իսկ իբրեւ գթացաւ աստուածութիւնդ քո առ մարդկութիւն տկարութեանս մերոյ վասն յաճախ ողորմութեանդ քոյ, ոչ թողեր ի ձեռանէ վասն բարերարութեանդ քոյ: Ի ներքել երկայնմտութեանդ քոյ առաքեցեր զսուրբ մարգարէսն յերկիր եւ զփրկելիս քո որ եղեն լուսաւորք յերկրի ի խաւարչական ի մէջ ազգացն. . . . . որք յայտնեցին զքո խորհուրդս լուսաւորութեանդ, եւ քարոզեցին զկամս քո եւ զգալուստ Որդւոյդ քոյ յաշխարհ: . . . Որ ի վախճան ժամանակացն յայտնեցեր զխորհուրդս կամաց քոց, զոր յառաջագոյն պատրաստեցեր (պատմեցեր) ազգացն առաջնոցն սիրելի Որդւովդ քո առ նոսա ի ձեռն սրբոց քոց մարգարէից, զոր ի քէն առաքեցեր գալ ծնանել ի Կուսէն սրբոյ: . . . Ծնաւ ի Կուսէն մարմնով եւ մարդացաւ եւ մարմնացաւ իբրեւ զմեզ, այլ կայ եւ մնայ ի փառս աստուածութեան իւրոյ. . . . կատարեաց զկամս ծնողի իւրոյ. . . . կրել զիւր անարգութիւն վշտաց մահու տանջանաց մահուամբն եւ թաղմամբն հանդերձ: . . .

“Այլ վասն զի սովոր էին մարդիկ ուրախ լինել ի մեհեանս կռոցն զոհիւքն՝ զոր անմռնչոցն մատուցանէին, վասն այնորիկ եւ դու կոչեցեր ի զենումն Որդւոյ քոյ զտիեզերս, եւ ասացեր. Զպարարակ իմ զենեալ է եւ ճաշ իմ պատրաստեալ է. եւ բազմացուցեր զուրախութիւն ի խաչելոյ Որդւոյ քոյ, եւ յագեցուցեր զամենայն տիեզերս ի կենդանարար մարմնոյ որ էն կերակուր եւ կենդանութիւն բաւական՝ ամենայն երկրպագուաց քոց ընդ ամենայն տիեզերս: . . . Այլ քանզի ուտէին եւ ըմպէին մարդիկ զարիւն զոհից անասնոց դիցապաշտութեան, վասն այսորիկ եհեղ . . . զարիւն իւր ընդ նուագացն ուրախութեան արեանցն, որով եւ նորոգումն մարմնոց դալարութեան մարդկան. . . . զի մեք եմք գինք արեան Որդւոյ քոյ, փրկեալք եւ ազատեալք արեամբ եւ մարմնով նորա:„

Ասոնք բուն Կանոնին վրայէն թռչելով քաղելէն ետքը, կը դառնայ մեր աղօթամատոյցն անոր Նախերգանքէն ինչ ինչ շօշափել՝ մերձեցուցանելով վարդապետական մասանց (էջ 79):

"Տէր տուընջեան եւ հաստիչ խաւարի, արարիչ լուսոյ, քո է տիւ եւ քո է գիշեր. որ կարգեցեր լուսաւորս ի պէտս՝ առաջնորդս արարածոց քոց որ են յերկրի քում, որ արարեր զերկուս լուսաւորս առ ի պէտս շրջմանց տարեաց, ամսոց, ժամանակաց՝ առ ի բոլորել զժամանակս, չափողք աւուրց որ են յաշխարհի. զմին իշխանական տուընջեան, որ ունի զօրինակ Միածնիդ քոյ զանշէջ եւ զանպակաս . . . լուսոյ, որ յայտնելոց է իւրոց արդարոց ի հանդերձեալ աշխարհին, ուր ոչ աւուրք եւ ոչ գիշերք, ոչ շաբաթք եւ ոչ ամիսք եւ ոչ ամք եւ ոչ ժամք եւ ոչ ժամանակք եւ ոչ շրջմունք տարեաց եւ ոչ շրջանք ժամանակաց, բայց միայն Տէր է եւ անուն նորա միայն: . . . . Իսկ գնացք իշխանականին գիշերոյն, որ ունի քոյով կամօք Միածնիդ քոյ զօրինակ յարութեան յանձին բարձեալ բերէ ցուցանել նշանակել ամենայն երկրաւորաց զքաջալերութիւն ամենայն մեռելոց յարութեան: Յարեւմից մինչեւ յարեւելս երթայ ի մանկութիւն, դարձեալ յարեւմուտս կամօք քովք ծերացեալ հասանէ. պատի թաղի, գուշակ թաղելոց, յարութիւն մեռելոց, մխիթարութիւն քաջալերութեան առ արարածս մատուցանէ: . . . Նաեւ գուշակէ մաշականն զյաւիտենականնէդ, անցականն զանանցէդ, հնականն զնորոգչէդ իւրմէ, որ կամօք քովք փոփոխի ի կերպարանս՝ որպէս կամք քո հրամայեցին լինել, մինչեւ բարձցին առակք լինելոցն (առակքն լինելոց), զոր եդիր պատրաստեցեր յօր կատարման խոստմանց քոց, յորժամ առնիցես ամենեցուն հատուցումն ի ձեռն Միածնիդ եւ Հոգւոյդ սրբոյ. զի քո է եւ քեզ վայել են փառք յաւիտեան եւ յաւիտեանս:"

Գրեթէ անմիջապէս կը յայէ իրեն ծանօթ պատարագին Յիշատակներէն մաս մը. (էջ 81):

"Տուր համբերութիւն կատարել զընթացս իմ նեղութեամբ յոր կամս. բժիշկ ցաւոց մերոց, ողջացուցիչ բեկելոց, անդորրիչ նեղելոց, եւ արձակիչ կապելոց, մխիթարիչ սգաւորաց, յոյս անյուսից, խռովելոց հանգիստ, աշխատելոց նաւահանգիստ, որ նայիս սիրով յարարածս քո, եւ կերակրես զամենեսեան քաղցրութեամբ քով: Տուր ինձ, Տէր, առնուլ պսակ, . . . վերանալ ընդ առաջ Որդւոյ քոյ սիրելոյդ, յորժամ յափշտակեսցէ զանձկացեալսն իւր ի ճառագայթ լուսոյ իւրոյ":

Աս վերջին կտորը յայտնապէս Բարսղի պատարագին մէջէն առնուած է.[1] ասոր տարակոյս իսկ չ'ըլլար. նոյնն ըսելու է վերոյիշեալ հատուածին նկատմամբ՝ որն ալ դարձեալ Բարսղի Կանոնին մասը կը յիշեցնէ. իսկ Նախերգանէ մ'առնուած մասը կը ցուցնէ թէ զԱգաթանգեղեան մատեանը գրողը Բարսղի պատարագէն ուրիշ պատարագ կամ պատարագներ ալ կը ճանչնայ. որովհետեւ Բարսեղ իր Նախերգանին մէջ հին Նախերգաններուն ոլարածոց ստորագրութեան ուրիշ բան փոխանակած է:

---

1 Տես վարը՝ Բնագիր Բարսղի պատարագին. Հատ. Գ.:

Բայց մեզի կարեւորագոյնն յայսմ ան է որ, ինչպէս Փաւստոսի՝ նոյնպէս Ագաթանգեղեայ քով գտնուած այս եւ սոյն պատարագի թարգմանութեամբ երեւան կու գան Բարսղի պատարագի հատուածներ. թարգմանութիւն՝ զորն որ իբրեւ հին հիմս ի լոյս կ'ընծայենք։ Թող աս վերջին Յիշատակաց մասը՝ որն որ բազմօք բառ առ բառ կը ձայնակցի յիշեալ թարգմանութեան, նաեւ Կանոնին մասին մէջ շօշափելի կ'ըլլայ ըսածնիս՝ Ագաթանգեղեայ քով ալ։ Ուր “[illegible]” կը կարդանք, յիշեալ թարգմանութիւնը կը կարդայ՝ “[illegible].” եւ աս թարգմանութենէն առնուած Փաւստեան հատուածին մէջ նոյնպէս ըսուած է, “[illegible],” — ուր յոյն բնագիրն է՝ Οὐ ἀπεστράφης (τὸ πλάσμα σου) εἰς τέλος ὃ ἐποίησας ἀγαθέ. Հոս փակագծի մէջ առնուածը τὸ πλάσμα σου = “ստեղծուածս քո”, յաջորդ նախադասութեան ձգուած է հայերէն թարգմանութեան մէջ։ Ուստի յայտնի է որ Հայոց դարձը գրող հայ մատենագիրն ալ աս պատարագն այսպէս հայերէն գիտէ եւ այսպէս գործածած է։

Ասով գոցես անդունդ մը կը կամրուի՝ աս մեր (Ս. Բարսղի) պատարագին հայերէն թարգմանութեան ժամանակն աւելի եւս դէպ ի վեր հանելու։ Կորիւն՝ 440ին մեռնող վարդապետին (Ս. Մեսրոպայ) վարքը “անյապաղ” գրելու համար իր աշակերտակիցէն՝ ի Յովսէփայ Տեղապահէ՝ հրաման կ'ընդունի։ Կորեան աս գրութենէն բաւական յառաջ դրուած պիտ'որ ըլլայ վերոյիշեալ Սահառունեաց Հայոց պատմութիւնը, եւ բաւական ժամանակ անցած՝ մինչեւ որ հրապարակուելով Կորիւն ստանայ եւ անկէ հատուածներ իր գրութեան մէջ օրինակէ։ Բայց մեր Սահառունեաց գիրքը՝ Ագաթանգեղոսի անուն կրող մատենին շարունակութիւն մ'ըլլալու մտքով գրուած է. դարձեալ աս “Գրիգորիսի գիրքն,” ալ իրեն գրութեան եւ հրապարակութեան ժամանակ կը պահանջէ։ Ասանկով հարկ է նոյն իսկ հայկական դպրութեան անմիջապէս առաջին տարիներուն հանել աս պատարագին հայերէն թարգմանութիւնը՝ որմէ անխաբ հատուածիկ մը ահա աս Ագաթանգեղեայ ըսուած մատենին մէջ ալ կը գտնենք։ Ասանկով թարգմանութիւն մ'ունեցած կ'ըլլանք՝ որն որ ըստ այսմ Բարսղի գրութենէն մինակ իբր 40—60 տարի կրտսեր է։

Եթէ ասանկով իրերն իրենց տէրերուն կը դառնան, առ որս միշտ կ'աղաղակէին, անով բան մը չեն կորսնցըներ մեր պաշտամանց գրքերը. այլ շատ բան կը վաստկին՝ իրենց յարգն աւելնալով եւ ճոխութիւնն երեւնալով ի մասնաւորի բոլոր Արեւելեայց մէջ։ Ինչ որ կաթուղիկէ եկեղեցւոյ է՝ մերն ալ է, ինչպէս մենք ալ իրենն ենք։ “Իմ եւ Քո” ճշդիւ խօսելով՝ չկայ։

---

## Գ.

## ՈՒՐՈՒԱԳԻՐ ԵՐԱԽԱՅԻՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ

Մամբրէի անապատին մէջ՝ բաւական հեռի ի շինէն՝ Եղբայրանոցի մը մատրան մէջ չէր կրնար ամենայն ընդարձակութեամբ կատարուիլ Հաւատացելոց պատարագին կամ “Խորհրդականաց” նախընթաց՝ ամէն տեսնողի եւ լսողի համար ազատ՝ պաշտօնը, այս ինքն անյատուկ կերպով “Պատարագ Երախայից” ըսուածը, ուր ընթերցուածներէն ետքը երախայից, դիւահարաց

եւ ապաշխարողաց վրայ ժողովուրդը՝ սարկաւագէն յորդորուած՝ կ'աղօթէր, եւ քահանայն կամ եպիսկոպոսը զատ զատ աս խմբերուն վրայ աղօթելէն ետքը՝ զատ զատ նոյն խմբերը դուրս կ'ելլէին, մինակ արժանաւոր կնքաւորները ներս մնալով։

Բայց, եթէ հոն այնպէս, ստուգիւ ուրիշ տեղեր՝ այս ինքն ի շինամիջի յաւանս, ի քաղաքս, յոստանս, վերոյիշեալ կարգերը կը կատարուէին։ 5ր դարուն սկիզբներէն՝ չթարգմանուած ալ, թարգմանուած ալ, ծանօթ եւ ի գործածութեան էր ասորական «Առաքելոց վարդապետութեան» կամ «Կանոնաց» ըսածը թէ «Նոյն որ ժողովումն ըլլայ՝ մարգարէական եւ առաքելական ընթերցուածք ըլլան, որոնք աւետարանի ընթերցմամբ կնքուին։»[1] Աս աւանդ կը կատարուէր՝ դեռ հայերէն սուրբ Գիրք չեղած՝ ասորերէն ընթերցմամբ,[2] որոնց անմիջապէս առաջին տասնամեկին մէջ յաջորդեց հայերէնը։

Ասոնց կը յաջորդէր «Վարդապետութիւն», որով սուրբ Գրոց մէջէն կարդացուածին վրայ կը խօսուէր. ուստի երկու գործ միանգամայն կը կատարուէր՝ ցորչափ հայերէն բնագիր չկար, այս ինքն մէկ մը բերնուց ասորի բնագիրը թարգմանել՝ մաս մաս եւ կամ կարդացուած հատուածն անընդհատ, մէկ մ'ալ անկէ ետքը մեկնութիւնը տալ՝ ժողովրդեան խմացմանն եւ պիտոյից համեմատ։ Անոր համար ան ատեններուն սովորութիւնն էր՝ աս հրապարակական վարդապետութեան մասը «Թարգմանութիւն» անուանել, կրկին գործողութիւնն ալ մէկէն նշանակելով։[3] Հարկաւ առ այս յաջողակ եղողներ քիչ էին, եւ այնպէս՝ ժողովրդեան շատ անգամ Աստուծոյ խօսքը ասորի լեզուաւ ղօղանջիւն մը կը մնար։ Անոր համար աստուածային պաշտամանց ալ հայերէն դպրութեան սկիզբը Հայաստանի մէջ դարագլուխ մ'եղաւ։

Յոյն Կանոնաց կրկին հայ թարգմանութիւններէն ծանօթ էր Լաւոդիկեայ Կանոնը թէ «Պարտ է զկնի ճաշակմանն՝ երախայի աղօթս լինել եւ ապա ապաշխարողաց, եւ գնացելոց նոցա, ապա հաւատացելոց։»[4] Սակայն երեւցածն էր արդէն նոյն կարգերուն գործածութիւնը քան աս Կանոնաց թարգմանութիւնները։ Հայոց դպրութեան առաջին տարիները, գուցէ ամիսները, հայերէնի յեղուած Պատարագամատուցին հետ աս προαναφορικὴ մասն ալ հայերէն էր։

Ա՛լ աս մասը մեզի համար շատոնց քայքայուած ցրուած է՝ ուրիշ ազգաց եւ լեզուաց եղածին պէս՝ երախայ, ապաշխարող, ունկնդիր կամ ապաշխարող հրապարակաւ չունենալով։ Առաքելական Սահմանադրութեանց պատարագն է միայն՝ որ անիկայ ամենուն համար պահած է պատարագին սկիզբները։ Ուստի եթէ կ'ուզենք, որչափ հնար է մեր 5ր դարուն առաջին կիսոյն «Երախայից» ըսուած պատարագը վերստին կազմել ժողվելով, դիտենք՝ ինչ պիտ'որ փնտռենք։ Երախայից վրայ Աղօթք մը՝ եպիսկոպոսին կամ քահանային ձեռքը

[1] «Վարդապետութիւն Առաքելոց» Կան. Թ.։

[2] Խոր. Գ., ծը, եւ պայծառ՝ Ղազար Փարպ. տպ. Վենետ. 1873 էջ 43։

[3] Խոր. եւ Ղ. Փարպ. անդ։

[4] Դնեմ յոյն Կանոնաց երկրորդ թարգմանիչը՝ ԺԹ. Կանոնը առնելով կը յեղու հայերէն. (կրաւոբրագոյն թարգմ. իբր ի հատորակել 5ր դարու.) «Յետ ճաշակմանն՝ յերախայից վերայ աղօթս, ... ապաշխարողաց աղօթս առնել, եւ յետ այսը ի ձեռն խոնարհելոյն եւ զօրհնութիւն ընդունելոյ եւ արտաքս գնալոյ. եւ այսպէս ի վերայ հաւատացելոց աղօթս առնել երիցս. զմին լռութեամբ, եւ զերկրորդն եւ զերրորդն քարոզութեամբ կատարել, եւ ապա այսպէս զողջոյնն տալ՝ երիցունք եպիսկոպոսաց. ապա աշխարհականք միմեանց, եւ ապա պատարագն կատարեսցի։»

վրանին, սոր նախընթաց ըլլալով Բողոքական մը՝ որն որ ժողովուրդն անոնց համար աղօթելու կը հրաւիրէ. նոյնպէս "ի ստամոքսեայ զրկելոց" վրայ. նոյնպէս ապաշխարողաց վրայ:

Գործածութեան նկատմամբ՝ շատ կենդանի կերպով կը նշմարենք զատոնք յոյն Կանոնաց հայկական կերպարանափոխութեամբ յիշեալ երկրորդ հայերէն թարգմանութեան մէջ, որն որ իբր 5ᵗ դարուն կէսէն քիչ ետքը կատարուած է: — Անոնց տաճար մտնելն եւ ելլելը, ("մտցէ եւ ելցէ.") — անոնց վրայ ձեռնադրութիւնը, ("ընդ ձեռամբ"). — ապաշխարողաց "խոնարհել եւ զօրհնութիւն ընդունել." — իրենց համար զատուած տեղը՝ ուստի հաւատացելոց եւ պաշտօնէից ձայնը կը լսուէր. ("դրունք ունկնդրութեան" կամ "Ձայնին միայն լուիցէ") եւ այլն: Ուրիշ տեղ մը[1] "Խստիւ" կը կշտամբին (նաեւ բանադրանօք) ան հաւատացեալները՝ որոնք եկեղեցի կը մտնեն, եւ սուրբ Գրոց ընթերցուածները լսելէն ետքը՝ ժողովրդեան ըրած աղօթքին եւ պատարագին չհաղորդուած՝ յանդգնօրէն կ'ելլեն կը հեռանան կ'երթան, "դէմ դարձուցեալ ի Սրբութենէն:"[2]

Իսկ բնագիրնե՞րը: "Գործ այդ է. դոյն աշխատութիւն," ինչպէս կ'ըսեն:

Բողոքականաց նկատմամբ գիտէ յուսահատած ենք կարող ըլլալու բաւական հաւանականութեամբ մը ցուցընել մասնաւորը՝ թէ հոս կամ հոն ըլլայ: Ոչ այսպէս Աղօթից նկատմամբ՝ որոնք հասարակօրէն, ինչպէս ուրիշ անգամ առիթներ պիտ'որ ունենանք տեսնելու, աւելի կը թափառին քան թէ բոլորովին կը կորսուին:

Ահա երախայից վրայ, որոնք "ընդ ձեռամբ" գալով դուրս պիտ'որ ելլեն, մեր հարց ըրած Աղօթքը:

"Օրհնեալ ես Տէր Աստուած բարերարութեամբ քով, որ նորոգութիւնդ ես հնացելոց եւ կեանք մահկանացուաց: Դու ես զօրութիւն եւ օգնութիւն յուսացելոց ի քեզ: Ի քո հզօր եւ ամենազօր անունդ հաստատուն լիցին պատուական արարածք եկեալք ի ձեռնադրութիւն քրիստոնէութեան,[3] հզօրք եւ աներկիւղք պահպանութեամբ աջոյդ քով սրբով, զի դու ես մերձաւոր ամենայնի եւ բարերար առ ամենեսին. պահեա զսա (կարդա՝ զսոսա) եւ սրբեա ճշմարտութեամբ քով: Աղաչեմք զքեզ, Տէր, զի եկեսցէ ի սա (ի սոսա) Հոգի սուրբ, Հոգի ճշմարտութեան, Հոգի որդեգրութեան, եւ արժանաւորք եղիցին գտանիլ սուրբք յաջոյ կողմանէ քումմէ եւ ժառան-

---

[1] Անտիոքայ Բ. Կանոնին հայկական պարունակութիւնն երկրորդ թարգմանութեան մէջ:

[2] Հնոց մանաւոր երկիւղածութիւնն էր՝ եկեղեցիէն ելլելու առեն կանակը ուղղանոյն չդարձընելով դուրս ելլել: Ս. Գրիգոր. Նարեկացի. իր մեծ երկիւղածութեան գործոց մէջ նոյնը կը յիշէ: Եթէ ոտանն որ խորհուրդը կատարուի լմննայ, ան ատեն յայանի է "Սրբութեան" թիկունս դարձուցած չեն ըլլար: Այնպէս անշուշտ կը մտածէ մեր Կանոնագիրը:

[3] Հին առում մը "քրիստոնեայ" կամ "քրիստոնէութիւն" բառին՝ իբրեւ "երախայ" եւ "երախայութիւն", կնքուած չեղած, (ձեռնադրութեամբ) չմկրտուած կ'անուանուէր երախայն: Նոյն նշանակութեամբ առեւ մեր ծիսարանաց (մաշտոցաց) Մկրտութեան կարգին առաջին աղօթքը:

գակից աղքայութեան երկնից ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում վայել է փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։,,

Աս աղօթական աղօթքը, — որ կը կրէ ուրիշ շատերուն տիպը՝ որոնք աս ժամանակիս կը վերաբերին, ինչպէս առեւնին կը տեսնենք, ուր հին պարզութեամբ իմաստից բնական կապ մը ծայրէ ծայր հեզաբար կը հոլովի առանց բաղմաբանութեան՝ — այլայլած, կերպ կերպ թէ ըստ իմաստին եւ թէ ըստ լեզուին փոխուած, տարուած դրուած է 40օրեայ եկեղեցի բերուած տղայոյն վրայ ըսուելու՝ հասարակ ձեռագիր եւ տպագիր ծիսարաններու մէջ։ Իր մաքուր վիճակին մէջ կը տեսնուի Ս. Ղազարու 1216ին գրուած մատենին մէջ՝ դրուած իբրեւ երկրորդ դրուագ՝ մկրտութեան առաջին աղօթքին, ինչպէս նաեւ քանի մը մեր մատենադարանին ոչ այնչափ հին մատեաններուն մէջ, ուր ցայսօր ճանչցուած ծիսարաններնուս թագաւորը — Ս. Ղազարու մատենադարանին երկաթագիր օրինակը — նոյնը հոն չունի։ Փորձերով դիտուած բան է որ զանազան պարագայից զուգընթացութեամբ՝ շատ անգամ նորագոյն մատեանք իրենցմէ հնագունի մը չունեցած մէկ հին կտորը յառաջ կը բերեն։ Բայց աս եւ ասոր պէս երեւոյթներու եւ անոնց պատճառին վրայ խօսքէն իր տեղը։

Այսահարաց կամ ի դիւէ ըմբռնելոց գալով — որոնց վրայ սոյն ժամանակի հայ կանոնագէտք, (ինչպէս յիշեալ Կանոնաց կամ որոշմանց մէջ կը տեսնենք) բաղմօք զբաղած են, — կը կարծէ Խոսրով իր "Պատարագի մեկնութեան" մատենական մէջ[1] թէ անոնց վրայ ըսուեցուած աղօթքն ան եղած ըլլայ՝ զոր որ մեր հիմակուան պատարագին մէջ կ'աղօթենք "Խաղաղութեամբ քով, Քրիստոս Փրկիչ մեր, որ ի վեր է քան զամենայն միտս եւ զբանս" եւն. "Այս դրուագ է, — կ'ըսէ — զոր ասէ Նըրանելին Յովհան[2] թէ վասն այսահարացն կարգեալ է. քանզի արտաքոյ եկեղեցւոյ կալով այսոսքն՝ յայսմ ժամու ի ներքս ածէին սարկաւագունքն, եւ կացուցանէին յառաջ, եւ քահանայն զայս մատուցեալ աղօթս, բովանդակ ժողովուրդն պաղատանս վասն նոցա առնէին։"

Աս շատ խելամտութեամբ, ջերմ սրտիւ եւ բաւական հմտութեամբ գրուած գրքուկին հեղինակը չեմ կարծեր որ աս խօսքերով ուզած ըլլայ ըսել՝ թէ ինք Ոսկեբերան "Խաղաղութեամբ քով" աղօթքին համար սանկ խօսած ըլլայ, — աղօթքի մը համար որն որ դեռ գրուած իսկ չէր անոր ատեն։ Ինք Անձեւացեաց եպիսկոպոսը քիչ մը աղօթքին կեցած դիրքէն, բայց աւելի եւս անոր ներքին կազմութենէն՝ կը ջանայ իր գաղափարը հաստատել. բայց ղանիկայ ալ չգտնելով՝ ըստ կամի կը յաւելու թէ "Աս աղօթքը հիմա առ հասարակ ամէնուն համար ըսուելուն՝ խօսքերը հին վիճակին մէջ չեն մնացած.[3] վասն զի յառաջագոյն սանկ եղած պիտ'որ ըլլայ. "Ամրացո զսոսա" — եւ "Հաւասարեցո զսոսա ընդ ճշմարիտ երկրպագուս քո։" Նաեւ հիմակուան ըսուածը հեռու չէ դիտումէն. վասն զի բոլոր մեղաց արկածք ի չարէն են. ուստի կ'երեւայ թէ այսահարաց համար աղօթողները սանկ կ'ըսէին։ "Ամրացո եւ աներկիւղ պահեա ի չարէն." իսկ հիմայ կ'ըսենք "Յամենայն չարէ", այս ինքն անոր ամէն

[1] Խոսր. Մեկնութիւն աղօթից Պատար. (տպ. Կ. Պոլիս. 1730 էջ 7–8։)

[2] Ոսկեբերան։

[3] "ի հնութենէն յեղեալ են բանքն։,,

նետերէն„ եւ այլն։ Սակայն այն մեծ յարգութեամբն ալ՝ զորն որ աս մեծ եպիսկոպոսին ունինք, դժուարին է մեզի իր աս աղօթքին, ինչպէս կ'ըսեն, "Ամէն„ մը կցել։ Որեն կարծելու կերպով խօսիլը կը ցուցընէ որ ըսածը բնագրով մ'աւելը չունի։ Անոր համար, Թողլով ան աղօթքը հոն՝ անանկ ինչպէս որ կեցած է, կ'ախորժէինք որ մեր ան ատենուան Հայոց պատահարաց վրայ ըսածը աս հետեւեալ ըլլայ՝ որն որ ծիշդ վերը յառաջ բերուած երախայից ձեռնադրութեան աղօթքին բովանդակ նկարագիրն ունի.

"Տէր Աստուած զօրութեանց, որ բժշկես զախտս եւ զհիւանդութիւնս ժողովրդեան քոյ, եւ փառաւորիս համապազ ի ծառայից քոց. գթա ի զրկեալս յայս (ի զրկեալքս յայսոսիկ) յայսոց չարաց, եւ մի Թողուր ի ձեռաց քոց, Տէր բարերար։ Սաստեա այսոց պղծոց, եւ խորտակեա զսատանայ ի ներքոյ ոտից մերոց։ Սրբեա զծառայս քո, եւ նորոգեա զսա (զսոսա) Հոգւով սրբով, եւ խառնեա ի միաբանութիւն եկեղեցւոյ քոյ սրբոյ. շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։„

Աս ձեւը կրնար կորսուած համարուիլ, եթէ դարձեալ վերյիշեալ 1216ին մատեանը մեզի պահած չըլլայր. վասն զի չէ Թէ մինակ մեր ցայսօր տեսած մատենից մէջ չենք նշմարած ասիկայ, հապա նոյն իսկ համբաւաւոր երկաթագիր ծիսարանին (Մաշտոցին) մէջ չի գտնուիր։

Ապաշխարողաց վրայ վերջապէս կայ ձեւ մը, ինչպէս ծանօթ է, կանոնական Ժամերգութեան մէջ Քարոզութեամբ մէկտեղ, բայց անիկայ աւելի կրսեր ժամանակի է. գոնէ ըստ մասին Քարոզութեան՝ բոլորովին Յովհան Մանդակունի է հոն, որն որ ամենայն իրաւամբք կրնայ "Վարդապետ ապաշխարութեան„ կոչուիլ։ Սակայն կայ բարեբախտութեամբ ուրիշ հնագոյն ձեւ մը՝ զորն որ իր կարգաւորութեան մէջ (ի Կոչումն յապաշխարութիւն) առած է աս անխոնջ Հայրապետը, բայց, (ինչպէս ուրիշ անգամներ օրինակը շատ պիտ'որ տեսնենք,) ինչ ինչ ընդ մէջ սրկանելով։ Սակայն բախտաւոր ենք յայսմ որ (որ եւ իցէ ձեռագիր մատեաններէ անցնելով) մեզի Անձեւացեաց եպիսկոպոսը դեռ Մանդակունիէն չեղանակաւորուած բնագիրը կու տայ — գրեթէ պատահմամբ մը, — որն որ սանկ է.

"Տէր Աստուած բարձրեալ, գովեալ եւ փառաւորեալ, որ երկայնամիտ ես քաղցրութեամբ քով, բազումողորմ եւ բազմաշնորհ ես առ ամենեսեան՝ որ կարդան առ քեզ եւ խնդրեն ի քէն զքաւութիւն եւ զԹողութիւն յանցանաց։ Արդ ողորմեաց, Աստուած, ի վերայ ապաշխարողաց. եւ ընկալ զսոցա զաղօԹս, զխնդրուածս, զպաղատանս, զխոստովանութիւնս գԹութեամբ քո. Թող սոցա զմեղս եւ զյանցանս եւ զպարտիս մարդասիրութեամբ քո։ Բժշկեա զվէրս, զհարուածս, զբեկումն որ եղեւ ի նենգութենէ Թշնամւոյն եւ ի մոլար խաբէութենէ նորա. որպէս զի սոքա միւսանգամ առողջացեալք Հոգւով եւ մարմնով՝ մտցեն յեկեղեցի քո սուրբ, եւ ընդ ժողովրդեան

քում հանցեն զօրհնութիւն եւ զփառս Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս. ամէն։„[1]

Աս ձեւն ալ՝ զոր որ աս մաքրութեանը մէջ մինակ Մոսլով մեզի աւանդուած է, կը շօշափէ Առաքելական Սահմանադրութեանց պատարագին Ապաշխարողաց վրայ ըսուածները, երբ որ հոն սարկաւագը կ'ըսէ. καθάρῃ δὲ αὐτοὺς ἀπὸ παντὸς μολυσμοῦ σαρκὸς καὶ πνεύματος. (Բ. Կորնթ. Է. 1.) καὶ ἑνώσῃ αὐτοὺς ἀποκαταστήσας εἰς τὴν ἁγίαν αὐτοῦ ποίμνην κ. τ. λ. եւ եպիսկոպոսը կ'ըսէ աղօթքին ընթացքին մէջ. αὐτὸς καὶ νῦν πρόσδεξαι τῶν ἱκετῶν σου τὴν μετάγνωσιν — -- καὶ ἀποκατάστησον αὐτοὺς τῇ ἁγίᾳ σου ἐκκλησίᾳ ἐν τῇ προτέρᾳ ἀξίᾳ καὶ τιμῇ եւ այլն։ Նմանապէս "Նախասրբեալց„ (προαγιασμένων. praesanctificatorum) պատարագին երախայից աղօթքին մէջ՝ τῆς παλαιᾶς πλάνης καὶ τῆς μεθοδείας τοῦ ἀντικειμένου — մեր աղօթքին "ի նենգութենէ թշնամւոյն եւ ի մոլար խաբէութենէ նորա„ ըսածին հետ ըստ առաւելութեան կը նմանին՝ պաշտամանց ասութիւնք բազմօք հասարակաց ըլլալով։

Բոլոր աս մեր աղօթքին շէնքը կրնայ համեմատուիլ աղօթքի մը՝ որուն համար գիտենք կատարեալ ապահովութեամբ թէ աս ժամանակէն է, այսինքն Յովհաննու Իմաստասիրի իր Կանոնաց մէջ մեզի պահած զոյգ մը աղօթքին՝ զորոնք Ս. Սահակայ կ'անուանէ, եւ կարծես թէ աս եւ մեր առաջիկայ աղօթքը մի եւ նոյն կաղապարի մէջէն թափուած են։ Հոն ալ, օրինակ իմն, աս ասութեան ձեւը՝ "Ընկալ, բարերար եւ մարդասէր Տէր, զամենեցուն մեր զաղօթս եւ զխնդրուածս, եւ զխոստովանութիւնս եւ զգոհութիւնս. եւ շնորհեա ամենեցուն մեզ, Տէր, զքո առատ ողորմութիւնդ եւ զգթութիւնդ։„

Աս երեք աղօթքներուն նախընթաց Քարոզութեանց համար կանխելով ըսինք թէ զուր կը փնտռենք։ Գուցէ փշրանքները հիմայ սարկաւագին՝ երախային վրայ ըսած Քարոզութեան մէջ գտնուին. ասանկ ալ Ապաշխարողաց վրայ ան Կարգին մէջ որն որ "Կոչումն յապաշխարութիւն„ կ'անուանուի՝ դարձեալ սարկաւագին Քարոզութեան մէջ։ Այսահարաց համար եւ ոչ նշմար մ'ունինք։

Ասոնք ելլելէն ետքը՝ ներսը մնացած հաւատացեալք սարկաւագէն առաջնորդուած՝ պէտ'որ աղօթէին համառօտ խօսքով մը Աստուծոյ դիմելով։ Ասոր գոնէ սկիզբը, գոհութիւն Աստուծոյ, մնացած է ցայսօր՝ նոյն ատենուան

---

[1] Մանդակունւոյն ընդարձակածը. "Տէր Աստուած բարձրեալ, գթած եւ փառաւորեալ, որ երկայնամիտ ես գթութեամբ, եւ քաղցր է ողորմութիւն քո, եւ բազմաշնորհ ես առ ամենեսեան՝ որք կարդան առ քեզ, եւ կարդան խնդրելով զքաւութիւն եւ զթողութիւն մեղաց իւրեանց, որպէս կանխաւ խօսեցար ի ձեռն մարգարէին եւ ասացեր թէ Դարձարուք առ իս եւ ես դարձայց առ ձեզ. քանզի ոչ կամիմ զմահ մեղաւորին՝ այլ դառնալ նորա ի չար ճանապարհէն եւ կեալ. եւ դու, Տէր իսկ ասացեր քո ամենասուրբ բերանովդ՝ թէ Ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն։ Արդ աղաչեմ, Տէր, ի վերայ ապաշխարողացս. ընկալ զսոցա զաղօթս եւ զպաղատանս, եւ գթութեամբ քո թող սոցա զյանցանս եւ զմեղս եւ զպարտիս, եւ մարդասիրութեամբ քո բժշկեա զսոցա (յոգ. զսորա) զվէրս եւ զհարուածս եւ զբեկումն որ եղեւ ի նենգութենէ թշնամւոյն եւ ի մոլորապատիր խաբէութենէ նորա. որպէս զի սոքա միւսանգամ առողջացեալք հոգւով՝ մտցեն յեկեղեցի քո սուրբ. եւ ընդ ժողովրդեան քում քեզ հանցեն զօրհնութիւն եւ զփառս Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։„

լեզուաւ եւ ճաշակաւ, եւ մեր Հայք ալ աւելի 1470* տարի առաջ կը լսէին գրեթէ նոյնպէս՝ ինչ որ մենք հիմայ կը լսենք սարկաւագէն, երբ կը յորդորէ.

"Եւ եւս[1] հաւատով աղաչեսցուք եւ խնդրեսցուք յԱստուծոյ ի Հօրէ եւ ի Տեառնէ մերմէ ամենակալէ ի վերայ ժամու[2] պաշտաման[3] եւ աղօթից, զի Աստուած արժանի ընդունելութեան արասցէ։[4] Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց, ընկալցի զխնդրուածս սրտից մերոց, ողորմեսցի ի վերայ մեր։ Աղօթք մեր եւ խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծութեան[5] նորա. եւ նա տացէ մեզ միաբան հաւատով, յարդարութիւն վաստակել։ Զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր Տէրն ամենակալ։ Կեցո, եւ ողորմեա մեզ Տէր։"[6]

Դժուարաւ կրնայ տարակուսուիլ որ հոս, ինչպէս որ հին պատարագք ունին, սարկաւագը զանազան վիճակաց եւ պիտոյից խնդրուածք կը ծաւալէր՝ հրաւիրելով հաւատացեալները, (ինչպէս Առաքելական Սահմանադրութեանց մէջ կայ) թէ՝

"Ասասցուք ամենքեան միաբանութեամբ՝ Տէր ողորմեա։ Աշխարհի խաղաղութեան, — կաթուղիկէ եկեղեցւոյ հաստատութեան," (այս ինքն բուրւոք վիճակի մէջ գտնուելուն), — բոլոր "եպիսկոպոսաց," — "քահանայութեան," — բոլոր "ուխտի եկեղեցւոյ," — "թագաւորաց եւ իշխանաց," "Վասն զի Տէրն ամենակալ հնազանդեսցուսցէ առաջի նոցա զամենայն պատերազմունս թշնամեաց," — "Որ ի գերութեան են եւ ի չար ծառայութեան," — "Օդոց, անձրեւաց քաղցրութեան եւ պտղոց առատութեան," — "Պտղաբերից ի սուրբ եկեղեցիս Աստուծոյ," եւ — "Որ մատնեալ են ի ձեռս անօրինաց վասն անուանն Քրիստոսի," — "Հոգւոցն հանգուցելոց՝ որք հաւատով ի Քրիստոս ննջեցին," վերջապէս — "Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց ի Տեառնէ խնդրել," եւ զի — "Զանձինս մեր եւ զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։"

Ասոնք անշուշտ յաւելուածներով (ի Մանդակունւոյն) մնացած են հիմա ժամերգութեան սեպհական. բայց պատարագաց համեմատութիւնէն եւ մեր պաշտամանց գրքերուն պատմութիւնէն կրնայ գուշակուիլ՝ թէ բուն աս συναπτήին նախնական տեղը հոս եղած է, կ'ենթադրուի՝ քիչ մը տարբեր ըստ լեզուի՝ հիմակուանէն, ուր դեռ կը փայլին փշուրք (այսպէս ըսենք) ասկէ։

* Տես վերը՝ էջ 1, ծան.։

1 "Եւ եւս" (ἔτι καὶ ἔτι) այս ինքն "դարձեալ", վասն զի աւելի առաջ քանի մ'անգամ (Երախայից, Այսահարաց, Ապաշխարողաց համար) աղօթած են։

2 Թէ այսպէս կը կարդայ Խոսրով եւ թէ հիմակուան պէս "ի ժամու"։

3 "Պաշտաման եւ աղօթից" առաւելութիւնը գործածուած է Ե. դարուն կանոնաց երկրորդ թարգմանչէն ինքնաձեան յաւելուածոց մէջ։

4 Թէ այսպէս կը կարդայ Խոսրով հիմակուան պէս եւ թէ "ընդունելութեան արժանի"։

5 Խոսրով՝ "մեծի փառութեան"։

6 Բացայայտ կը նշանակէ հոս Խոսրով՝ թէ Սարկաւագին եւ ոչ ժողովրդեան բանն է "Կեցո, եւ ողորմեա մեզ, Տէր"։

*

Անկէ ետքը ժամն է՝ ուր Հաւատացեալք մօտաւոր ըլլան ընծայից որ սեղանին վրայ կը բերուին։ Աս միջոցին սարկաւագին զրուցածներէն պահած է մեզի Յովհան Մանդակունի իր մէկ ճառին մէջ՝ նախնական ձեւին գոնէ մասունքը։ Լսէ՛, կ'ըսէ, Քարոզին ահեղ բողոքը։ "Մի ոք յերախայից՝ (կ'ըսէ), մի ոք ի թերահաւատից եւ մի ոք յանյուսից„։ Որոնք որ սրբութեամբ պատրաստ չեն, զանոնք դուրս ղրկելէն ետքը, ներս մնացողներուն կ'աղաղակէ. "Հայեցարուք յանձինս ձեր, եւ զսիրտս ձեր քննեցէք։ Մի խղճիւ ոք եւ մի նենգութեամբ, մի խորամանգութեամբ ոք եւ մի պատրանօք, մի երկմտութեամբ եւ մի թերահաւատութեամբ մերձեսցի, զի սրբութիւն Խորհրդոյն սրբոց եւ անարատից վայելէ։„

Յայտնի է ինչ որ պահուած է դարձեալ հին՝ բայց նախընթացէն կրսերագոյն ձեւի մէջ, ուր ասոնք քիչ մը համառօտուած են՝ ուրիշ յաւելուած մ'ընելով։ Սա խօսքերը "Մի խղճիւ գայթագղութեամբ, մի նենգութեամբ խորամանկութեան„ պահուած է, բայց մնացածը՝ սանկ համառօտելով՝ "մերձեսցի յաստուածային Խորհուրդս՝„ տարուած կապուած է նախընթաց "Մի ոք յերախայից . . .„ ըսած մասին, որպէս զի դիւրաւ եւ աղէկ կապուին սա աւելցուած խօսքերը՝ "Այլ ուղիղ 'վարուք, պարզ մտօք, միամիտ սրտիւ եւ այլն։„ Աս եղանակաւորութիւնն ալ է անշուշտ ի Յովհաննէ Մանդակունւոյ։[2]

Հնագոյն ձեւին սա խօսքը՝ "Զի սրբութիւն Խորհրդոյն սրբոց եւ անարատից վայելէ„ (որն որ "Սրբութիւնք՝ սրբոց„ = τὰ ἅγια τοῖς ἁγίοις բացագանչութեան ընդլայնումն է,) սանկ կը յեղյեղէ 5ᵗ դարու ընդմիջելէն անմիջապէս ետքը յունական Կանոնաց ազատօրէն թարգմանողը։ Նաեւ Մանդակունի ուրիշ տեղ մը նոյն սրբութիւնը յառաջ կը բերէ՝ "ասէ„ մը մուծանելով. ո՞վ է ան "ասողը„, բայց եթէ Պատարագին բնագիրը՝ դեռ ան ատեն ի գործածութեան։

Սոյն պատրաստութիւնք կամ Քարոզութիւնն եղած ատեն, արդէն հագուած եւ մատուըները սարկաւագաց բերած ջրով լուացած՝ սուրբ սեղանին առջեւն է եպիսկոպոսը կամ քահանայն, ըսելով ի ծածուկ՝ "Տէր Աստուած արարիչ մեր, որ արարեր զմեզ յոչընչէ . . .։„

Ահաւասիկ մեր 5ᵗ դարու հնագոյն Պատարագամատուցին — Բարսղի պատարագին — սկիզբն ենք՝ առաջին աղօթքն առջեւնիս։[3]

---

[1] Խոսր. "Ի մերձիլ սուրբ Խորհրդոյն (ընծայիցն) յահագին սեղանն. ասէ Սարկաւագն՝ Մի ոք յերախայից„ եւ այլն։

[2] Առաքել. Սահմ. Ը. Գրոց պատարագին մէջ (Գլ. 12.) Μή τις τῶν κατηχουμένων, μή τις τῶν ἀκροωμένων, μή τις τῶν ἀπίστων, μή τις τῶν ἑτεροδόξων. — Իսկ նոյն Սահմ. Բ. Գրոց պատարագին մէջ (Գլ. 54.) կը պատուիրուի որ եպիսկոպոսին մօտ կեցող սարկաւագը բարձր ձայնիւ ըսէ՝ Μήτις κατά τινος, μήτις ἐν ὑποκρίσει· ἵνα ἐὰν εὑρεθῇ ἔν τισιν ἀντιλογία, συνειδήσει κρουσθέντες δεηθῶσι τοῦ Θεοῦ καὶ διαλλαγῶσι τοῖς ἀδελφοῖς. Փիթրա քարոզութեան սա ձեւին համար՝ Μήτις κατά τινος, μήτις ἐν ὑποκρίσει կ'ըսէ թէ Առաքել. Սահմ. պատարագէն դուրս չէ տեսնուած. ահաւասիկ Հայոց հին պատարագին մնացորդաց մէջ։ Մարկոսի պատարագին Ողջունի աղօթքին մէջն ալ՝ Μή ἐν ὑποκρίσει.

[3] Խոսրով, էջ 18. "Յամենայն պատարագամատոյցն առաջին աղօթքն վասն մատուցանողին արժանաւոր լինելոյ ասի։„

# 4.

## *Առաջին պատարագ Ս. Բարսղի Կեսարացւոյ.*

*(Ստուգմամբ ընծայեալ Ս. Գրիգորի Լուսաւորչի։)*

## Ա.

### ԱԶԴՈՒՄՆ

*Երկու Օրինակ ունինք առաջիկայ պատարագէն ամբողջ, այսինքն*

1. *Լիոնի կամ Լուզունեան Օրինակը, եւ*
2. *Միւնխէնի կամ Միւնիխի կամ Մոնաքեան Օրինակը։*

*Աս վերջնոյն ընթերցուածը նախընթացէն ընտրելագոյն կ'երեւայ սովորաբար։**

*Ասոնցմէ զատ երեք մասնական Օրինակ ունինք, այս ինքն՝*

3. *Փաւստոսի Բիւզանդացւոյ քով (Դպր. Ե. Գլ. ԻԸ,) յառաջ բերուած մեծ Հաւատամքը, ասդին անդին նոյն հեղինակին քով ցրուեալ մանր կտորուանքով մէկտեղ։*
4. *Միւռոնի օրհնութեան կանոնին մէջ առնուած մաս մը, զատելով անհարազատ յաւելուածներէն։***
5. *Բաւական մեծ մաս մը աս պատարագէն Ս. Ղազարու մատենադարանին Թիւ 25-երորդ՝ "Աղօթագիրք նախնեաց" վերագրուած մատենին մէջ, որն որ սկիզբէն սկսելով Հոգւոյն սրբոյ Կոչման հասած՝ կը դադրի։****

*Ասոնց եւ ոչ մէկը կ'ամբողջացնէ մեր պատարագին Յիշատակաց ան մեծ մասը, որն որ չի գիտցուիր ինչպէս եւ ինչու մեր շատ անգամ յիշած՝ պատարագաց Հաւաքիչը համառօտութեամբ գրած է վրան — ո՞վ գիտէ որմէ — աս համառօտութեան վերնագիր մ'ալ յարմարցընելով, Մոնաքեան Օրինակին մէջ, իբրեւ "Յիշատակ՝ զոր ասացեալ է աստուածապատիւ հոգեկիր եւ սրբազան Տեառն Վարդանայ Եպիսկոպոսի", իսկ Լուզունեանին մէջ, "Աղօթք՝ զոր ասացեալ է Մեսրոբայ Վարդապետի". բայց իրօք Ս. Բարսղի Յիշատակաց քիչ մը անխնայ համառօտութիւնն է, ինչպէս կը տեսնենք։*

*Հայուն յոյնէն տարբերութիւններն առանձնակի չենք նշանակեր միշտ, վասն զի արդէն ամբողջ յոյն բնագիրը դրուած է դիմացը։*

---

* Օրինակացս վրայ տես վերը՝ էջ 83։

** Մաս մը Միւռոնի օրհնութեան եւ մաս մը կաթուղիկոսի ձեռնադրութեան կանոնին մէջ։ Յաջորդ համեմատութեանց մէջ գործածած ենք մեր Մատենադարանի Թ. 51 (հին Թ. 11, էջ 29—30 եւ 36)։

*** Աղօթագիրք ի Վենետիկ. Թ. 25, էջ 44—47։

*Աս տարբերութիւնք երեք կարգի կը վերածին.*

*1. Հայ բնագիրն զնախնական յոյն բնագիրը կը թուի երեւցընել՝ հիմակուան յոյն բնագրէն շեղելով։*

*2. Հայ բնագրին ի վաղնջուց սեպհական յաւելուածք կամ դարձուածք կ՚երեւան։*

*3. Հայ բնագրին ընդօրինակողաց կամ ձեռնարկողաց կողմանէ կրած աղաւաղութիւնք կը նշանակուին, զորոնք՝ որչափ հնար է՝ տարբեր գրով կամ նշաններով հիմակուան յունական բնագրին մէջէն կ՚ամբողջացընենք, նախնական բնագրին համաձայն ենթադրելով հիմակուանը ան մասերուն մէջ, այս ինքն գլխաւորաբար Ցիշատակաց մասին։*

*Ա. Բարսղի պատարագին յունարէն բնագիրն որ կը դնենք* Daniel*ի* Codex Liturgicus *հրատարակութենէն առնուած է, տարբերութեամբք (ի ծանօթութիւնս), որոնք Հռոմ Բարբերինեան մատենադարանին երկաթագիր Աղօթամատուցին մէջ կը գտնուին, Աղօթամատուցին՝ զորն որ իբրեւ* 1000 *տարուան կը համարի Սապիլեոն։ Տեղ մը քանի մը թուղթ Բարսղի պատարագէն խլուած ինկած է։*

## ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՔ

L,* Լուգդ. Օր. = Լուգդունեան Օրինակ։

M, Մնք. Օր. = Մոնաքոնեան Օրինակ։

F, Փաւստ. = Փաւստոսի Բիւզանդացւոյ քովի Հատուածք։

W եւ W², Մ. օրհն. = Միւռոնի օրհնութեան աղօթքին մէջ գտնուած հատուածը։

Ա. . . = Լատին թարգմանութիւնն յԱսորւոյն ի ձեռն Անդրէի Մասիոսի։

Հին. հռ. = Հին հռոմայեցի թարգմանութիւնն։

Բարբ. մատ. = Յոյնն ի Բարբերինեան մատենին։

Հիմ. յն. = Այժմու յունական բնագիրը, ինչպէս որ Goar-ի կամ Ադալբերդայ Դանիէլի քով կը գտնուի (IV, p. 421 ff)։

Յն. Աղեք. = Աղեքսանդրիա գործածուած յունարէն Բարսղի պատարագը որուն եգիպտականն ալ կայ։

---

* Յաջորդ Բնագրիս նկատմամբ մեր դրուի որ կրկին ծանօթութիւնք կան: Յարգոյ հեղինակին ծանօթութիւնք մանրագիր երկսիւն զետեղուած են ամէն էջի ներքեւ, որոնք հեղինակին ձեռագրին մէջ բնագրին ետքը զատ դրուած էին: Մեր բնագրին ներքեւ զետեղելով շարունակեալ թուով նշանակեցինք ծանօթութիւններն, որ գտնելը դիւրին ըլլայ: Մեծ տառերով բնագրին միջեւ կից դրինք երկրորդ կարգ մը ծանօթութեանց, այսինքն ձեռագրաց մանրամասն տարբերութիւնք եւ նմանիք, որոնք զետեղուած են բնագրին եզերքը նշանակուած տողերու թուոյն կարգաւ: Ուր նշանակուած չէ բան մը՝ կը նշանակէ որ ամէն ձեռագիրք համաձայն են բնագրին ընթերցուածոյն հետ: Այս համեմատութիւնք մեզմէ են ըստ օրինակութեանց Յարգ. հեղինակին Մոնաքի, Լիոնի եւն ձեռագրաց: Աւելի որոշ ըլլալու համար՝ փոխանակ հայկական տառերու եւրոպական L, M, F, W եւ W² նշանները գործածեցինք ձեռագիրները ցուցընելու եւ զասոնք ալ կցեցինք “Համառօտութեանց„ շարքին մէջ: Իսկ V կը նշանակէ Ս. Ղազարու թ. 25 աղօթագիրքը:



## ԲՆԱԳԻՐ ԲԱՐՍԵՂԵԱՆ

### ՀԻՆ ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ[1]

### ԱՂՕԹՔ ՈՂՋՈՒՆԻ

1. Ը. — *Քահանայն.* Տէր Աստուած արարիչ մեր, որ արարեր զամենայն յոչընչէ, եւ ածեր զմեզ յայս կենդանութիւն, եւ ցուցեր մեզ ճանապարհ կենաց եւ փրկութեան[2] եւ արժանաւորս արարեր զմեզ յայտնու-

‖ Վերնագիր։ Ձեռագրաց մէջ Ս. Գրիգոր Լուսաւորչի կ'ընծայուի Պատարագա-տութեամբ. այսպէս L «Պատարագ. Աստուծով սուրբ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին։ Ասի սրբոյն Աթանասիու սկիզբն։» — M «Պատարագամատոյց, զոր արարեալ է սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի։» — V «Աղօթք որ ի Պատարագատետրն. Ծ. զատ ի քարոզէն։ Պատարագամատոյց զոր ասացեալ է սրբոյն Գրիգորի Լուսաւորչին։» — Բնագրիս մէջ դրուած Ա. Բ. Գ. եւն բաժանմունք ձեռագրաց մէջ չկան, նոյնպէս նաեւ աղօթքներուն տիտղոսները, զոր օրինակ՝ «Աղօթք ողջունի,» «Նախերգան,» «Կանոն» եւն, որոնք նոր աւելցուած են։

Ա. ‖[3] L միայն ունի «Ք», այսինքն «Քահանայն.» M, V չունին։ — L կը սկսի «Աստուած մեր» (չունի «Տէր» բառը։) F «Տէր Աստուած զօրութեանց որ արարեր զամենայն յոչնչէ.» նոյնպէս (Դ, ծէ, էջ 175, 2) «Արարիչ մեր որ արարեր զերկինս եւ զծով յոչնչէ.» — W (էջ 29—30) «Տէր Աստուած արարիչ ամենայն արարածոց, որ արարեր զամենայն յոչնչէ, եւ ածեր զմեզ ....» — F ունի առ այլ (Ե, դ, էջ 197, 25) «որ արարեր զմեզ յոչնչէ, եւ ածեր զմեզ յայս կենդանութիւն եւ ցուցեր մեզ ճանապարհ կենաց եւ փրկութեան։» Յաջորդները չկան ի F, որ քիչ մ'եւսքը կը սկսի բառացի օրինակել մեր պատարագը. (տես վերը՝ էջ 98.) ունին յաջորդները L, M, V եւ W (Ձեռնդր. Կաթողիկոսի. Զագր. Վիեննայի Թ. 51, էջ 29—30։) Ուր տարբերութիւն չէ նշանակուած, ասոնք լիովին կը համաձայնին վերը դրուած բնագրին հետ։ ‖[5] W «արժանաւորս արարեր զմեզ այսմ ահաւոր եւ երկնաւոր խորհրդոյ քահանայ-

Ա. [1] Այսպէս է վերնագիրը Միւն. Օր. մէջ։ «Պատարագամատոյց», ἀναφορά, Illatio, actio sacra։ Կ'աւելցուի «զոր արարեալ է Ս. Գրիգորի Հայոց Լուսաւորչի», որուն տեղ սկըզբնագիրը պիտ'որ ունեցած ըլլայ «Ս. Բարսղի» անունը։

[2] Հայերէն թարգմանութեան նախնական մասնաւոր յատկութիւններէն համարելու ենք՝ երբ որ կը կարդանք ὁ κτίσας ἡμᾶς, թարգմանուած «Արարիչ մեր, որ արարեր զամենայն յոչընչէ»։ Նոյն իսկ Փաւստոսի քով այսպէս է. «Տէր Աստուած զօրութեանց, որ արարեր զամենայն յոչընչէ։» Դարձեալ Դ. Դպր. Ծէ Գլ. Ջուլիթայ աղօթքն այսպէս սկսել կու տայ Փաւստ. 5ն դարուն եղանակաւորողը. «Արարիչ մեր, որ արարեր զերկինս եւ զերկիր եւ զծով յոչընչէ»։ Նոյնպէս Ի. Դպր. Դ. Գլ. Ս. Ներսէսի բերանն դրուածը Զիրաւայ ճակատուն առեն՝ «Որ արարեր զմեզ յոչընչէ, եւ ածեր զմեզ յայս կենդանութիւն, եւ ցուցեր մեզ ճանապարհ կենաց եւ փրկութեան։»

— Ունինք հայերէն Եղգադիոսէ դրուած Բարսղի վարք մը՝ ու արհամարհելի թարգմանութեամբ։ Եղգադիոս, կամ ո եւ իցէ յոյն,

# ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

## ՅՈՅՆ ԲՆԱԳԻՐ (ԲԻՒԶԱՆԴԵԱՆ ՊԱՏԱՐԱԳ)*

### Ἡ θεία λειτουργία τοῦ μεγάλου Βασιλείου.

*I. ** Κύριε ὁ Θεὸς ἡμῶν, ὁ κτίσας ἡμᾶς καὶ ἀγαγὼν εἰς τὴν ζωὴν ταύτην,*[1] *ὁ ὑποδείξας ἡμῖν ὁδοὺς εἰς σωτηρίαν, ὁ χαρισάμενος ἡμῖν οὐρανίων μυστηρίων ἀποκάλυψιν, [καὶ]*[2] *θέμενος ἡμᾶς εἰς τὴν διακονίαν ταύτην ἐν τῇ δυνάμει τοῦ παναγίου σου Πνεύματος*[3]*, εὐδόκησον, δέσποτα, γενέσθαι ἡμᾶς διακόνους τῆς καινῆς σου διαθήκης, λειτουργοὺς τῶν ἀχράντων*[4] *σου μυστηρίων· καὶ*[5] *πρόσδεξαι ἡμᾶς προσεγγίζοντας τῷ ἁγίῳ σου θυσιαστηρίῳ κατὰ τὸ πλῆθος τοῦ ἐλέους σου, ἵνα ἄξιοι γενώμεθα*[6] *τοῦ προσφέρειν σοι δῶρά τε καὶ θυσίας*[7] *ὑπέρ τε ἑαυτῶν καὶ τῶν*[8] *τοῦ λαοῦ ἀγνοημάτων· [καὶ δὸς ἡμῖν, Κύριε, μετὰ παντὸς φόβου καὶ*

* *Բնագիրս հոս դրուած է ըստ դիտաւորութեան Ցարզ. հեղինակին առնելով* Daniel*ի գործքէն (*IV, 425 *եւն): Ծանօթութեանց մէջ նշանակած ենք Բարբերինեան Աղօթամատոյցին ընթերցմունք՝* Barb. *նշանակելով. միայն մտադիր կ'ըննենք որ ասոնք կրնան պակասաւոր ըլլալ, վասն զի Ցարզ. հեղինակը յունական մասը չէր պատրաստած եւ Բարբերինեան ընթերցմունք* Daniel*ի հրատարակութեան վրայ նշանակած էր պարզապէս կապարագրչով եւ այս այժմ տեղ տեղ անընթեռնլի է գրեթէ. իսկ յունական ձեռագիրը չկրցանք անձամբ տեսնել ու համեմատել: Որպէս զի ծանօթութիւնք զուր տեղ չյաճախին՝ բաց տառերով տպագրուած են այն ընթերցմունք, զորոնք Բարբերինեան օրինակը կը յաւելու եւ սովորականը չունի, իսկ [ ] փակագծի մէջ առնուած են անոնք, զորոնք Բարբերինեանը չունի՝ այլ միայն սովորականը: Ինչպէս համեմատութենէս կը տեսնուի՝ սովորական օրինակը շատ երկայնաբան է, եւ հին հայ թարգմանութեան մերձաւոր է Բարբերինեանը: ՀՐՏՐ:*

** *Կը սկսինք այս տեղէն, ուր հայն ալ կը սկսի: (*Dan. *այս աղօթքը դրած է յէջն 105:) Որչափ կ'երեւայ՝ նաեւ* Barb. *ունի ասկէ յառաջ եղած մասերէն մէկ երկու կտոր: Բաժանմունք (*I, II *եւն) մերմէ են:*

[1] Barb. *ձեռագրին ἡμᾶς եւ ταύτην ունի արդէն Փաբբիկիոսի բնագիրը:* [2] Barb. *σὺ εἶ ὁ θέμενος...* [3] Barb. *τοῦ Πνεύματός σου παναγίου, εὐδόκησον δὴ Κύριε....* [4] Barb. *τῶν ἁγίων σου...* [5] Barb. *չիք.* [6] Barb. *γενώμεθα ἄξιοι.* [7] *փխ. δῶρα եւն* Barb. *ունի նման հայոյն՝ τὴν λογικὴν ταύτην καὶ ἀναίμακτον θυσίαν.* [8] Barb. *ὑπερ τῶν ἡμετέρων ἁμαρτημά-*

յառաջ քան զԴ դար, հոն Բարսղի պատարագին մէջ ատկէ առաջ ուրիշ աղօթք չի գիտեր. "Ցարուցեալ (Բարսեղ) դողութեամբ եկն յեկեղեցին եւ սկսանէր գրել ի քարտիսի այսպէս. ("Լից զբերան իմ գոհութեամբ, որպէս զի օրհնեցից զփառս քո:) "Տէր Աստուած մեր. որ ստացար (κτίσας, ըստ հոմութեան յունին, "ստանալ„ բառին փոխառերելով) զմեզ եւ ածեր ի կենդանութիւնս յայս: Եւ զայլ աղօթսն որքայ պատարագին:„ Կը համարինք յիշեալ զրուցները թէ ան է՝ զոր որ Դամասկացին (Ճառ Ա. Վասն Պարգ.) կը յիշէ իբրեւ *Βίον Βασιλείου τοῦ μάκαρος δι' Ἑλλαδίου τοῦ αὐτοῦ μαθητοῦ καὶ διαδόχου τῆς ἱεραρχίας*, իրաւամբք տար ընծայուած թէ ոչ, անորոշ խնդիր կը մնայ: Տես Վարք եւ Վկայաբ. տպ. ի Վենետ. (1874) Վարք Բարսղի (Հատ. Ա. էջ 220).

թեան երկնաւոր եւ ահաւոր խորհրդոյս. դու ես՝ որ եդիր զմեզ ի պաշտաման յայս, զաւրութեամբ սուրբ Հոգւոյդ, կարգեցեր զմեզ աւետարանիչս[3] նորոց կտակարանացս, արժանիս արարեր[4] զմեզ մերձենալ առ սուրբ սեղան քո, եւ մատուցանել քեզ պատարագ աւրհնութեան՝ զկենդանին[5] եւ զբանաւոր պաշտաման մեր. — Ի ձայն. — եւ առաքեա ի մեզ զշնորհս բարեբար սուրբ Հոգւոյդ[6] . . . . այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:[7]

Ժողովուրդն. Ամէն:

---

տկան կաշմանս:„ ‖[6] LV "ի պաշտօնս յայս, զօրութեամբ...„ W "ի պաշտօնս այս, զօրութեամբ..:„ ‖[7] W "կարգեցեր աւետարանիչս„ (առանց "զմեզ„ ունենալու:) ‖[8] "Նորոց կտակարանացս„ ուղղագոյն ընթերցումն ունի միայն W, այլք՝ LMV "Նորոյ կտակարանացս:„ W ասկէ ետքը մեծ մասի մը վրայէն կ'սահնու եւ կը շարունակէ սա խօսքով "դու ես որ շնորհեցեր մեզ զգիտութիւն սրբութեանդ քո„ եւն (տես Գ., տող 31:) ‖[9] LMV "առ սեղանս քո„ կ'ընթեռնուն: LV "օրհնութեան:„ ‖[10] LV "պաշտօնս:„ "Ի ձայն„ խորագրին տեղ (առ V) L "վերաձայն„ կ'ըսէ. M չունի, բայց լուսանցքի վրայ նշանակուած է "ի ձ.„ =(ի ձայն:) — Ուղիղն է "Եւ առաքեա ի մեզ„ ընթեռնուլ. MV "եւ առաքել„ կ'ըսէ, — որով խօսքն այսպէս կ'ըլլայ ի M "արժանի արարեր զմեզ ... մատուցանել քեզ պատարագ.. (հոս քանի մը բառ ի տեղ թողուած) եւ առաքել ի մեզ զշնորհս„ եւն. L "եւ առաքեա ի մեզ,„ բայց լուսանցքի վրայ ուղղուած է -եա վերջաւորութիւնը՝ "-ել:„ — Ձեռագիրք ծանօթ բանաձեւերը միշտ համառօտութեամբ կը նշանակեն. հոս L "այժմ, եւն.„ M "այժմ, եւն„ V լոկ. "այժմ:„ ‖[12] "Ժողովուրդ„ հոս եւ ի յաջորդս Ցարգ. հեղինակը դրած է՝ ըստ հնութեան. ձեռագիրք Դպիր կը գրեն այս տեղերն. հոս M "Դպիրն. Ամէն.„ V "Դպ. ամէն„

[3] Նախնական մատենաւոր հայերէն յատկութիւններէն համարելու ենք դարձեալ λειτουργούς բառին "աւետարանիչս„ թարգմանուիլը:

[4] Կը բաղձայինք կարդալ, համաձայն յոյն բնագրին՝ "արժանիս արար„:

[5] Ἀναίμακτον (= անարիւն): Կ'երեւայ թէ կը խորշի հին թարգմանը "անարիւն„ թարգմանել, ըստ որում նկատմամբ հին օրինաց պատարագներուն՝ "անարիւն„ է, բայց երբք չէ առանց արեան. անոր համար "կենդանին„:

[6] Կիսագրուած տեղը "սուրբ Հոգւոյդ...„ յայտնի կերպով կրճատուած է գրչագիրներէն փառաբանութեան սկիզբը. առաջին "սուրբ Հոգւոյդ„էն ցատքելով երկրորդ "սուրբ Հոգւոյդ„ի մը զորն որ ուրիշ պարբերութեամբ մը կը լրացընէր երից աստուածային անձանց յիշատակութիւնը:

[7] Թէ սա առաջին աղօթքին, ինչպէս որ հիմակուան Բիւզանդեան բնագրին մէջ կը գտնուի, բազմոց գրիչ գտած է հետզհետէ դարուց ի դար՝ չի կրնար տարակուսուիլ:

Առաջին կէսը, որն որ անշուշտ նախնականն է, բազմաթիւ մանր տարբերութիւններ ընդունած է յետոյ, ինչպէս Բարսղի յն. Աղեքսանդրեանին եւ Բարբերինեանին համեմատութենէն յայտնի կ'ըլլայ:

Երկրորդ կէսը, որն որ գրեթէ ամբողջ յետնագոյն յաւելուած կ'երեւայ, ան ալ աւելի զարգարուած է Բարբերինեան մատենին եւ հա. թարգմանութեան տաններէն ետքը, կրկնութիւնները սովորական ναὶ ὁ Θεός-ով մը կապելով, եւ ասանկ առնուած է Ս. Յակոբայ պատարագին սկիզբը հաւաքուած աղօթից կարգը: Հայերէնին նկատմամբ չենք գիտեր թէ վերջերը քանի մը բառ կամ պարբերութիւն մը ինկած ըլլայ անհոգութեամբ եւ կամայական վարմամբ գրչագրաց. որն որ՝ ափսոս, շատ շօշափելի է բովանդակ պատարագին ընդօրինակութեան մէջ: — Քիչ մը կտրուկ ալ երեւնայ հայերէնը Օրինակներնուս գէշութենէն սա աղօթքին ծայրը, բայց ստուգիւ չէ եղած ի Բարսեղէ այնչափ երկնցած ինչպէս Բիւզանդեանը՝ իմաստի կրկնութիւններով եւ բառից առատութեամբ, — եթէ չենք սխալիր:

Առաջին մասին մէջ այժմու սովորական բն. Κύριε ὁ Θεός (Բարբ. ἡμῶν) — ὁ κτίσας (Բարբ. եւ յն. Աղեքս. ἡμᾶς) — Ζωὴν (Բարբ. եւ յն. Աղեքս. ταύτην) — Θέμενος (Բարբ. եւ յն. Աղեքս. σὺ εἶ ὁ θέμ.) — δυνάμει τοῦ Παναγίου σου Πν. (յն. Աղեքս. δυνάμει τοῦ Πν. Բարբ. Πν. σου παναγίου) — εὐδόκησον, δέσποτα, γενέσθαι (Բարբ. եւ յն. Աղեքս. εὐδόκησον δὲ, Κύριε,

*συνειδήσεως καθαρᾶς προσκομίσαι σοι τὴν πνευματικὴν ταύτην καὶ ἀναίμακτον θυσίαν.] ἣν προσδεξάμενος εἰς τὸ ἅγιον καὶ ὑπερουράνιον καὶ νοερόν σου θυσιαστήριον, εἰς ὀσμὴν εὐωδίας [πνευματικῆς], ἀντικατάπεμψον ἡμῖν τὴν χάριν τοῦ παναγίου*[9] *σου Πνεύματος· ναὶ ὁ Θεὸς ἐπίβληψον ἐφ' ἡμᾶς,*[10] *καὶ ἔπιδε*[11] *ἐπὶ τὴν [λογικὴν] λατρείαν ἡμῶν ταύτην, καὶ πρόσδεξαι αὐτὴν, ὡς προσεδέξω Ἄβελ τὰ δῶρα, Νῶε τὰς θυσίας,*[12] *Μωσέως καὶ Ἀαρὼν τὰς ἱερωσύνας, Σαμουὴλ τὰς εἰρηνικὰς, Δαβὶδ τὴν μετάνοιαν, Ζαχαρίου τὸ θυμίαμα· ὡς προσεδέξω ἐκ τῶν ἁγίων σου ἀποστόλων*[13] *τὴν ἀληθινὴν ταύτην λατρείαν, οὕτω*[14] *πρόσδεξαι καὶ ἐκ χειρῶν ἡμῶν τῶν ἁμαρτωλῶν τὰ [προκείμενα] δῶρα ταῦτα ἐν τῇ χρηστότητί σου·*[15] *[καὶ δὸς γενέσθαι τὴν προσφορὰν ἡμῶν εὐπρόσδεκτον, ἡγιασμένην ἐν Πνεύματι ἁγίῳ, εἰς ἐξίλασμα τῶν ἡμετέρων πλημμελημάτων, καὶ τῶν τοῦ λαοῦ ἀγνοημάτων, καὶ εἰς ἀνάπαυσιν τῶν προκεκοιμένων ψυχῶν·] ἵνα [καὶ ἡμεῖς οἱ ταπεινοὶ καὶ ἁμαρτωλοὶ καὶ ἀνάξιοι δοῦλοί σου,] καταξιωθέντες [ἀδόλως] λειτουργεῖν*[16] *τῷ ἁγίῳ σου θυσιαστηρίῳ, λάβωμεν*[17] *τὸν μισθὸν τῶν πιστῶν καὶ φρονίμων οἰκονόμων [καὶ εὕρωμεν χάριν καὶ ἔλεος] ἐν τῇ ἡμέρᾳ [τῇ φοβερᾷ] τῆς ἀνταποδόσεώς σου τῆς δικαίας καὶ ἀγαθῆς.*[18] ***Ἐκφώνως ὁ ἱερεύς***[19] *Διὰ τῶν οἰκτιρμῶν τοῦ μονογενοῦς σου Υἱοῦ, μεθ' οὗ εὐλογητὸς εἶ, σὺν τῷ παναγίῳ καὶ ἀγαθῷ καὶ ζωοποιῷ σου Πνεύματι,*[20] *νῦν καὶ ἀεὶ, καὶ εἰς τοὺς αἰῶνας τῶν αἰώνων.*

21 ***Ὁ χορός.*** *Ἀμήν.* — ***Ὁ ἱερεύς.*** *Εἰρήνη πᾶσιν.*

---

*των καὶ τῶν τοῦ λαοῦ...* [9] Barb. *ἁγίου.* [10] Barb. *փխ. ναὶ եւն ἐπίβληψον ἐφ' ἡμᾶς ὁ Θεός.* [11] Barb. *ἔφιδε.* [12] Barb. *կը յաւելու հոս Ἀβραὰμ τὰς ὁλοκάρπωσεις. Բարսղի տրուած այս խօսքն ակամայ կը յիշեցընէ մեր այժմու ձայնաւոր պատարագի «Ցայս յարկս» շարականին սա խօսքերը՝ «Ընկալ առ ի մէնջ զընծայանուէր մաղթանս որպէս զպատարագն Աբէլի, զՆոյի եւ զԱբրահամու...։»* [13] *Այսպէս* Barb. *առաքելականն՝ ἐκ χειρὸς τῶν ἀποστόλων σου...* [14] Barb. *οὕτως καὶ ἐκ τῶν χειρῶν ἡμῶν τῶν ἁμαρτωλῶν πρόσδεξαι τὰ δῶρα....* [15] Barb. *կը յաւելու Κύριε. Առկէ սկսեալ մեծ մասը չունի* Barb. *որպէս եւ հայն։* [16] Barb. *ամբողջն այսպէս ունի՝ ἵνα καταξιωθέντες λειτουργεῖν ἀμέμπτως τῷ ἁγίῳ....* [17] Barb. *εὕρωμεν τὸν μισθὸν...* [18] *Հոս սովորական օրինակը սարկաւագին բերանը կը դնէ* 8 *տող բան մը, որ յետոյ ալ կը կրկնուի.* (Dan. 436.) *Բարբերինեանը չունի. եւ արդէն վրան ալ նշանակուած է որ Ոսկեբերանի պատարագէն է, ուստի հոս չդրինք։* [19] *Հոս եւ ամէն տեղ* Barb. *ἐκφώ. կը գրէ համառօտութեամբ, զոր եւ ամէն տեղ չենք նշանակեր (= Հ «ի ձայն։»)* [20] *Մինչեւ հոս ունի* Barb. [21] *Առկէ սկսեալ մինչեւ հատ.* III *երկայնաբան է սովորականն, ինչպէս նաեւ այժմու հայ օրինակներն՝ որ նոր պատարագէն առեր մուծեր են։* Barb. *այս ամբողջին տեղ սա միայն հետեւեալն ունի, որ անշուշտ հնագոյնն է. Μετὰ τὸ Ἀμὴν ἱερ. Εἰρήνη πᾶσιν· — Ὁ λαός· Καὶ τῷ πνεύματί σου. — Ὁ διάκονος· Ἀγαπήσωμεν ἀλλήλους. Καὶ μετὰ δοθῆναι τὴν ἀγάπην, λέγει· Τὰς θύρας, τὰς θύρας· πρόσχωμεν. — Ὁ λαὸς τὸ Πιστεύω, καὶ μετὰ Πιστ. λέγει ὁ διάκονος· Στῶμεν καλῶς. (այսչափ։) — Ὁ ἱερεύς· Ἡ χάρις τοῦ Κυρίου ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ καὶ ἡ ἀγάπη τοῦ Θεοῦ καὶ πατρὸς καὶ ἡ κοινωνία (այսպէս) τοῦ ἁγίου πνεύματος, εἴη μετὰ πάντων ἡμῶν. Ὁ λαός· Καὶ μετὰ πνεύματός σου (այժմ կտրուած է այս խօսքն, բայց* Barb. *ձեռագրին մէջ ըլլալու է։) Մնացեալը կը*

---

*τοῦ γ.) — ἀχράντων σου μ. (Բարբ. եւ յն. Աղեքս. ἁγίων σου μ.) — ὑπέρ δε ἑαυτῶν καὶ τῶν τοῦ λαοῦ σου ἀγνοημάτων (Բարբ. եւ յն. Աղեքս. ὑπὲρ τῶν ἡμετέρων ἁμαρτημάτων καὶ τῶν τοῦ λαοῦ σου ἀγ.) Առկէ ետքը Ձախանեալով այժմու բնագիրը բաղդատմամբ կը տարբերի Բարբերի-*

*Սարկաւագն.* Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան։
[Որք ոչ էք կարող հաղորդել, առ դուրս ելէք եւ աղօթեցէք։][8]
Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք, բարւոք կացցուք. եւ նայեցարուք զգուշութեամբ։[9]
*Ժողովուրդն.* Առ քեզ, Աստուած։[10]
[*Սարկաւագն.* Պատարագ Քրիստոս մատչի գառն Աստուծոյ։]
*Ժողովուրդն.* Ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ օրհնութեան։[11]

Բ. — *Քահանայն.* [Շնորհք, սէր եւ աստուածային սրբարար զօրութիւն Հօր եւ Որդւոյ եւ] Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ընդ ամենեսեանս։
*Ժողովուրդն.* Եւ ընդ հոգւոյդ քում։
*Քահանայն.* Ի վեր ընծայեցուցէք[12] զմիտս ձեր [աստուածային երկիւղիւ]։
*Ժողովուրդն.* Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ։[13]
*Քահանայն.* Եւ գոհացարուք զՏէառնէ [բոլորով սրտիւ]։
*Ժողովուրդն.* Արժան եւ իրաւ։[14]

---

L չունի։ [8] ff Յաջորդները միայն M ունի լիովին։ L սապէս նշանակուած է Յարգ. հեղինակիս ընդօրինակութեան մէջ "Սրկ. Ողջոյն տուք, առ դուրս ելէք եւ աղօթեցէք։ Դղ. Առ քեզ Աստուած. (մինչեւ ցԱրժան եւ իրաւ.") դարձեալ նշանակուած է որ L առանց կը կարդայ "... նայեցուք զգուշութեամբ." եւ "ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր երկիւղիւ։" — V աղօթագիրքն ամենեւին չէ գրած զասոնք, այլ սա ծանօթութիւնը կցած՝ "Սարկաւագն զՈղջոյնն ասէ ի լման որպէս Ատենասին, եւ ի վճարն քահանայն ասէ ի ծածուկ. Արժանի եւ յիրաւի վայել է" եւն. (տես Պ.) — Հմմտ. Ծան. ի տողն 30։

նեան Օրինակէն։ Չ՚երեւար որ բուն Բարսեղ հնչէ, այլ Բիւզանդեան գրիչ զգալի է, կրկնաբան եւ ճապաղ։

[8] Հոս անկիւնաւոր փակագիծներու մէջ առնուած կցորդները մեր Հասարակ պատարագին յատուկ են եւ անկէ հոս բերուած. նոյն իսկ լեզուն կ՚ազդարարէ Բարսեղեան հին հայերէն թարգմանութեան մասը համարուելու դէմ։

[9] "Նայեցարուք զգուշութեամբ" կ՚երեւայ համեմատիլ առ ἐν σοφίᾳ πρόσχωμεν, հին լտ. թարգմանութեան Intendamus։

[10] Ժողովրդեան "Առ քեզ. Աստուած" ըսելը բան մը չունի համապատասխանող ոչ յոյն բնագրին եւ ոչ անոր թարգմանութեանց մէջ։

[11] Հմմտ. յոյնը՝ "Ողորմութիւն խաղաղութեան". սակայն հին լտ. թարգմանութիւնը միաձայն է հայուն, misericordiam, pacem et sacr. laudis, այսպէս նաեւ Ասորին Մ՚առխաւի. իսկ յունարէնը Բարբերինեան մատենին մէջ ոչինչ ունի։

— "Զգրուեա. զգրուեա" հոս չկայ. եւ հիմնականն մեր պատարագին մէջ գտնուածը նորագոյն առեններ առնուած է, եւ նախնական չէ մեր պատարագին. որդէն "որք առ դուրս էք." կամ "առ դուրս ելէք" անոր համազօր է։ Ասոր պէս եւ

— "Ահիւ կացցուք. երկիւղիւ կացցուք բարւոք կացցուք" դարձեալ շատ նոր առեններ նախընթացէն ընդհատուած ընդունած է՝ մէջը ժողովրդեան ըսել տալով այն

— "Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ" երգը՝ որն որ ամենեւին մեր պատարագին հին զանգուածին չի յարմարիր։ Սակայն աւելի հնագոյն կ՚երեւայ ուրիշ բաժանում մը՝ դարձեալ նոյն քարոզութեան երկրորդ մասին մէջ եղած եւ ժողովրդեան բերանը գրուած (եւ ոչ մէկ պատարագի մէջ երեւցած) "Առ քեզ. Աստուած"ով մը միջահատելով նոյն քարոզութիւնը՝ որն որ իր ամբողջութեան մէջ պիտի՚որ ըլլար այսպէս. "Ահիւ կացցուք, եր-

*II.* **Ὁ διάκονος.** *Ἀγαπήσωμεν ἀλλήλους, ἵνα ἐν ὁμονοίᾳ ὁμολογήσωμεν.* — **Ὁ χορός.** *Πατέρα, υἱὸν καὶ ἅγιον πνεῦμα, τριάδα ὁμοούσιον καὶ ἀχώριστον.* — **Ὁ ἱερεὺς προσκυνεῖ τρὶς λέγων μυστικῶς.** *Ἀγαπήσω σὲ, Κύριε, ἡ ἰσχύς μου, Κύριε στερέωμά μου, καὶ καταφυγή μου. Τρίς.* — **Καὶ ὁ διάκονος περιπτύσσεται τὸ ὠράριον αὐτοῦ, καὶ προσκυνεῖ τρὶς, καὶ ἐπισυνάπτει ἐκφώνως.** *Τὰς θύρας, τὰς θύρας. Ἐν σοφίᾳ πρόσχωμεν.* — **Ὁ χορὸς τὸ Πιστεύω, καὶ μετὰ τὴν συμπλήρωσιν τοῦ ἁγίου συμβόλου, λέγει ὁ διάκονος ἐκφώνως.** *Στῶμεν καλῶς, στῶμεν μετὰ φόβου, πρόσχωμεν τὴν ἁγίαν ἀναφορὰν ἐν εἰρήνῃ προσφέρειν.* — **Ὁ χορός·** *Ἔλαιον εἰρήνης, θυσίαν αἰνέσεως.* — **Ὁ ἱερεὺς ἐκφώνως.** *Ἡ χάρις τοῦ Κυρίου ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ, καὶ ἡ ἀγάπη τοῦ θεοῦ καὶ πατρὸς, καὶ ἡ κοινωνία τοῦ ἁγίου πνεύματος, εἴη μετὰ πάντων ἡμῶν.* — **Ὁ χορός**[22]. *Καὶ μετὰ πνεύματός σου.* — **Ὁ ἱερεύς.** *Ἄνω σχῶμεν τὰς καρδίας.* — **Ὁ χορός.** *Ἔχομεν πρὸς τὸν Κύριον.* — **Ὁ ἱερεύς.** *Εὐχαριστήσωμεν τῷ Κυρίῳ.* — **Ὁ χορός**[23]. *Ἄξιον καὶ δίκαιόν [*[24] *εστι προσκυνεῖν πατέρα, υἱὸν, καὶ ἅγιον πνεῦμα, τριάδα ὁμοούσιον καὶ ἀχώριστον.]*

---

*համաձայնի սովորականին։* [22] Barb. *ὁ λαός.* [23] Barb. *ὁ λαός.* [24] *Այս փակագծեալը չունի* Barb. *իբրաւամբք։ Անոր տեղ սա ծանօթութիւնը կը կցէ՝* *καὶ ἱερ. ἀπαρχεται τας αγιας ἀναφορα* (*այսպէս։*) [25] *Այսպէս* Barb., *սո-*

*վիս զիս կացցուք, բարւոք կացցուք եւ նայեցարուք զգուշութեամբ։ Պատարագ Քրիստոս մատչի (ի մէջի մերում) գառն Աստուծոյ"։ Բոլոր պատարագամատուցաց համեմատութիւնը սանկ կ'ուզէ, նոյն իսկ Առաք. Սհմնդր. Պատարագէն սկսեալ. ենթադրելով միշտ որ հոն ժողովրդեան ընծայից մատուցման վերաբերեալ խօսքերը, սովորութիւնը դադրելով, փոխուած են, առանց նոյն իսկ մտադրութեան կատարուելու որքաղան զոհին վերաբերեցընելով։*

*Բ.* 12 *"Ի վեր ընծայեցուցէք"-ին, ինչպէս նաեւ "գոհացարուք (կամ "գոհացուք) զՏեառնէ"-ին՝ սարկաւագին բերանն անցնիլը սկզբնական չէ, թէպէտ հիմա մեր մէջ հասարակ եղած ըլլայ։ Խորովայ քով յայտնի կ'երեւայ թէ դեռ քահանային բերանն են սանք։ Անոր համար անխիղճ սկզբնական վիճակին դարձուցինք։*

13 *Ἔχομεν πρὸς τὸν Θεόν այսպէս թարգմանուած բոլոր հայերէն պատարագաց մէջ, որուն օրինակն ուրիշ տեղ ալ կ'երեւայ. օրինակի աղագաւ փոխանակ թարգմանելու "Առ Աստուած հզօր եւ կենդանի"՝ գրուած է "Առ քեզ. Աստուած հզօր եւ կենդանի։"*

14 *"Ողջոյն տուք"-էն մինչեւ "Արժան եւ իրաւ"-ին կը վերաբերին հետեւեալք առ Դունիէլ, էջ* 175 *կամ*

**VII. Et ascendunt diaconi ad altare et dicunt:** Qui non accepit baptismum etc.

[Renaldotius l. c. p. 595: Haec primis tantum vocibus desingnantur in manuscriptis. In missa Malabarica ita legitur: Qui non suscepit baptismum, discedat.

**Chorus:** Vere. Qui non suscepit illud, discedat.

**Sacerdos:** Ite, audientes, et videte ostia.

Bickell (*էջ* 62) *կը թարգմանէ այսպէս.* Qui non accepit bapt. abeat! Qui non accepit S. Sanctum (Confirm.) abeat! Qui illud non accepit, abeat! Ite, auditores, et respicite portas.

*Յայտնապէս առ կցորդներուն մէջ "Ունիմք առ քեզ. Տէր ամենակալ — Պատարագ Քրիստոս մատչի գառն Աստուծոյ" ասորական երակ մը կայ՝ որն որ "Առաքելոց (Ադդէի եւ Մարիսի)" ըսուած պատարագին նոյն տեղերը կը յիշեցընեն. ուր՝*

**Diac.:** Vigilanter et attente.

**Sacer.:** Gratia Domini nostri J. Ch. et charitas Dei Patris et communicatio Spiritus S. sit cum omnibus nobis, nunc etc.

**Pop.:** Amen.

**Sacer.:** Sursum sint mentes vestrae.

**Resp.:** Sunt ad te Deus Abraham, Isaac et Israel, rex gloriose.

**Sacer.:** Sacrificium Deo Domino omnium offertur. *Ասիկայ Εὐχαριστήσωμεν τῷ Κυρίῳ ըսելու տեղն է, զորն որ չունի ոչ ասիկայ եւ ոչ Թէոդորի եւ Նեստորի պատարագները՝ որոնք առ կցորդները "Առաք."ի պատարագէն առած են։*

**Resp.:** Dignum et justum est.

*Աս մասերուն համար՝* (*հմմտ.* Renald. l. c. p. 598 sq.).

ՆԱԽԵՐԳԱՆ

Գ. — *Քահանայն.* Յարժանի եւ յիրաւի վայելէ[15] գոհութիւն եւ երկրպագութիւն մեծվայելչութեանդ քո, փառաւորել զքեզ Ճշմարիտ Աստուած,[16] եւ մատուցանել քեզ պատարագ աւրհնութեան սուրբ սրտիւ[17] եւ խոնարհ հոգւով զկենդանի[18] եւ զբանաւոր պաշտաւնս մեր. զի դու ես՝ որ շնորհեցեր մեզ[19] զգիտութիւն սրբութեանդ[20] քո: Իսկ ո՞վ բաւական է խաւսել զզաւրութիւնս քո, լսելի առնել զամենայն[21] աւրհնութիւնս քո եւ կամ պատմել զսքանչելիս քո յամենայն տեղիս[22] եւ յամենայն ժամանակի, Տէր ամենայնի, արարիչ[23] երկնի եւ երկրի եւ ամենայն արարածոց երեւելեաց եւ աներեւութից, որ նստիս յաթոռ փառաց[24] քոց եւ տեսանես ի խորս անդնդոց. անսկիզբն, աներեւոյթ, անքաւ Հայր Տեառն մերոյ[25] եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ է պատկեր փառաց քոց,[26] կնիք հաւասար՝[27]

---

Գ. ‖[30] M "Քահանայն աղաւթէ". V (Համեմ. վերը՝ Ծան. ի տողն 13) "քահանայն ասէ ի ծածուկ:" L չունի: ‖[31] LV "մեծավայելչութեանդ:" ‖[32] LV "օրհնութեան:" — L սրբոյիւ:" ‖[33] LV "պաշտօնս մեր:" — W կը սկսի "զի դու ես" եւն խօսքով. (տես վերը՝ Ծան. ի տողն 7:) Համեմ. նաեւ F (Ե, ծէ, էՂ 175, 6) "Եւ շնորհեցեր մեզ զգիտութիւն քո:" ‖[34] W "Ե— (փխ. "Իսկ) ո՞վ է բաւական" եւն: ‖[35] W "խօսել զզօրութիւնս քո." LV "ասել զզօրութիւնս քո." V հոս կը յաւելու "եւ կամ պատմել զսքանչելիս քո." որ միւս ձեռագրաց մէջ քիչ մ'ետքը կու գայ, իսկ ի W կը պակսի: — W "Ե— լսելի առնել զամենայն օրհնութիւնս քո." նաեւ LV "զօրհնութիւնս:" ‖[36] W չունի "յամենայն տեղիս եւ յամենայն ժամանակի:" ‖[37] M "աներեւոյթից." W "եւ ամենայն երեւելեաց եւ աներեւութից արարածոց քոց." W ասկէ ետքը դարձեալ կ'ոստնու՝ կցելով "եւ կնիք եւ նկարագիր . . ." ‖[38] LMV չունին "քոց" բառը "փառաց" բառէն ետքը: — M պահած է "տեսանես" ուղիղ ընթերցուածը. LV "տեսանէս ի խորս . . ." ‖[40] LV "եւ Փրկչին:" — W կը սկսի.

Diac.: Petamus, confiteamur et obsecremus omnes in choro Dominum: state pure, et attendite his quae aguntur; tremendis mysteriis, quae consecrantur.

Sacer. Accessit ut oret, ut eius intercessione pax multiplicetur in vobis. Oculos vestros deorsum dimittite, et mentem vestram diligenter curate in coelum levare: petite et obsecrate hoc tempore: nemoque loqui audeat: et qui orat, corde oret in silentio et tremore permanente. Pax nobiscum.

Ita in missa Malabarica satis obscure.

In illis verbis latent formulae veteres hortationum a Diaconis alta voce pronunciari solitarum: *Στῶμεν καλῶς, πρόσχωμεν.*

Quod autem ita Syri Orientales expresserint graecam formulam: *Ἄνω τὰς καρδίας* — et alia addiderint, ut illa: "Apud te sunt Deus Abr. Deus Isa. Deus Isr" levis momenti est, cum sententia eadem sit. Quod sequitur „Oblatio Deo omn. Domino offertur" verti potest et sane melius: „Sacr. Deo off." vox enim illa quae proprie et ad verbum *προσφοράν* seu oblationem significat, pro sacrificio proprie dicto saepissime usurpatur. Haec vero verba in aliis Officiis non reperiuntur, sed eorum loco: Gratias agamus Domino.

Ա. Թէոդորի պայտէս. Sursum in excelsi sublimibus, in regione timenda gloriae ubi non cessant Cherubim alas suas agitare, neque desinunt iubili et laudes suaves sanctificationum Seraphim, ibi sint mentes vestrae.

Et respondent: Sunt apud te, Deus.

Sacer. prosequitur: Oblatio viva et rationabilis . . . Deo omnium Domino offertur.

Et respondent: Dignum et iustum est. Նման են սոսկ Նախերգանին Բարսղի (Praefatio Basilii.) Նոյնպէս են վերը նշանակուած responsaria ի պատարագին Նեստորի, միայն Ad te sunt, Deus խօսքէն ետքը "Աւաք." պատա-

*III. Ὁ ἱερεὺς κλινόμενος ἐπεύχεται μυστικῶς.* Ὁ ὢν δέσποτα Κύριε, θεὲ πατὴρ[25] παντοκράτορ προσκυνητὲ[26], ἄξιον ὡς ἀληθῶς, καὶ δίκαιον καὶ πρέπον τῇ μεγαλοπρεπείᾳ τῆς ἁγιοσύνης σου, σὲ αἰνεῖν, σὲ ὑμνεῖν[27], σὲ εὐλογεῖν[28], σὲ προσκυνεῖν, σοὶ εὐχαριστεῖν[29], σὲ δοξάζειν τὸν μόνον, ὄντως ὄντα Θεὸν, καὶ σοὶ προσφέρειν ἐν καρδίᾳ συντετριμμένῃ καὶ πνεύματι ταπεινώσεως τὴν λογικὴν ταύτην λατρείαν ἡμῶν· ὅτι σὺ εἶ ὁ χορισάμενος ἡμῖν τὴν ἐπίγνωσιν τῆς σῆς ἀληθείας, καὶ τίς ἱκανὸς λαλῆσαι τὰς δυναστείας σου, ἀκουστὰς ποιῆσαι πάσας τὰς αἰνέσεις σου; ἢ διηγήσασθαι πάντα τὰ θαυμάσιά σου ἐν παντὶ καιρῷ, δέσποτα τῶν ἁπάντων[30], Κύριε οὐρανοῦ καὶ γῆς, καὶ πάσης κτίσεως ὁρωμένης τε καὶ οὐχ ὁρωμένης, ὁ καθήμενος ἐπὶ θρόνου δόξης, καὶ ἐπιβλέπων ἀβύσσους, ἄναρχε, ἀόρατε, ἀκατάληπτε, ἀπερίγραπτε, ἀναλλοίωτε, ὁ πατὴρ τοῦ Κυρίου ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ, τοῦ μεγάλου Θεοῦ καὶ σωτῆρος τῆς ἐλπίδος ἡμῶν· ὅς ἐστιν εἰκὼν τῆς σῆς ἀγαθότητος, σφραγὶς ἰσότητος[31], ἐν ἑαυτῷ δεικνύς[32] σε τὸν πατέρα, λόγος ζῶν, Θεὸς ἀληθινὸς[33] πρὸ αἰώνων, σοφία, ζωὴ, ἁγιασμὸς, δύναμις, τὸ φῶς τὸ ἀληθινόν· παρ᾽ οὗ τὸ πνεῦμα τὸ ἅγιον ἐξεφάνη, τὸ τῆς ἀληθείας πνεῦμα, τὸ τῆς υἱοθεσίας χάρισμα, ὁ ἀῤῥαβὼν

---

փոխանակ՝ πατέρ. [26] Barb. παντωκρατωρ προσκυνητον (?) [27] Barb. σὲ αἰνην, σὲ ὑμνην. [28] Barb. εὐλωγην. [29] Barb. εὐχαριστην, σὲ δοξαζην … [30] Barb. ասոր տեղ Κυριε δεσποτα των δεσποτατων (այսպէս.) [31] Barb. σφραγις ἰσοτυπος. [32] Barb. δεικνοις. [33] Barb. այսպէս կը բաժնէ θεὸς ἀληθινὸς, πρὸ αἰώνων σοφία.

բացին պէս կայ Deus Abr., Isaac et Isr., Rex gloriae.

Գ. 15 Թուէպէս յն. ἄξιον ὡς ἀληθῶς καὶ δίκαιον καὶ πρέπον ըլլայ, չենք կարծեր որ թարգմանողը "վայել է„ գրած ըլլայ, այլ "վայելէ„ իբրեւ բայ։

16 "Ճշմարիտ Աստուած„, τὸν μόνον ὄντως ὄντα Θεόν, Առաք. Սհմնդր. պատրգ. τὸν ὄντως ὄντα Θεόν։

17 "Սուրբ սրտիւ„. յն. "սրտիւ բեկելով„։

18 "Կենդանի„ վերադիրը կը պակսի որ եւ իցէ յունական բնագրի եւ ուրիշ որ եւ իցէ թարգմանութեան։ Նախընթացէն (Ծան. 4) գիտենք որ "կենդանին„ կը պատասխանէր մեր թարգմանչին գրչին տակ ἀναίμακτον "անարիւն„ ձայնին։

19 "Մեզ„ երկու Օրինակներս ալ չունին. միւսներն օրհնութեան մէջի հատուածէն առած ենք, համաձայն յունին, հին լատին եւ Մասիոսի ասորի թարգմանութեան։

20 Հայոյն յատուկ է "սրբութեանդ„ փոխանակ "ճշմարտութեանդ„։

21 "Զամենայն„ երկու օրինակներս ալ չունին, միւսներն օրհնութեան հատուածը կը լրացնէ համաձայն յունին, հին լտ. եւ ասորւոյն Մասիոսի՝

22 "Ցամենայն տեղիս„ կը պակսի յունական բնագրին եւ ուրիշ որ եւ իցէ թարգմանութեան. կը յիշեցնէ հռոմէական պատարագի Նախերգանին ubique-ն։

23 "Տէր ամենայնի, արարիչ երկնի եւ երկրի„ յն. առաջին տեղը δέσποτα, երկրորդ տեղը Κύριε, որուն հայը չկրնալով պատասխանել. երկրորդ տեղը ըրած է "արարիչ„։

24 "Փառաց քոց„ յն. բարութեան (կամ բարերարութեան քո.) Կող. Ա. 15։

25 "Հայր Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի„ յն. "մեծի Աստուծոյ եւ փրկչին յուսոյն մերոյ„. այնպէս հին լտ.։ Ասորին Մասիոյ չունի "յուսոյն„, հապա "Տեառն մերոյ„։ "Անպարագրելի եւ անայլայլելի„ զորս որ հոս յն. ունի, նաեւ Բարբերինեանը. ինչպէս նաեւ հին լատինը, մեր թարգմանութենէն յետնագոյն կ'երեւայ։ Մասիոսի Ասորին ալ չունի։

26 "Փառաց քոյ„ ըստ հատուածոյ օրհնութեան միւսներ, համաձայն Ասորւոյն Մասիոսի։

27 "Կնիք հաւասար„ չէ թէ "հաւասարութեան„ ἰσότητος, զորն որ հիմնական բնագիրն ունի. վասն զի սա "հաւասար„-ը ածականաբար, ըստ հոգւոյ հայ լեզուին՝ որով թարգմանուած է, կը համապատասխանէ ἰσοτυπος-ին՝ զորն որ Բարբերինեան բնագիրն ունի, որուն հետ կը համաձայնի հին լատին թարգմանութիւնն ալ (obsignatio aequalis figurae). ինչպէս

որ յանձն իւր ցուցանէ զՀայրդ, Բան կենդանի,[28] Աստուած ճշմարիտ, յառաջ քան զյաւիտեանս[29] իմաստութիւն, սրբութիւն, զաւրութիւն, լոյս ճշմարիտ՝ որով յայտնեցաւ[30] Հոգին սուրբ, Հոգի իմաստութեան, Հոգի որդեգրութեան,[31] առՀաւատչեայ կենացն[32] Հանդերձելոց, պտուղ յաւիտենից բարութեանցն, կենդանարար զաւրութիւն, աղբիւր[33] սրբութեան, յորմէ ամենայն արարածք բանաւորք եւ մտաւորք զաւրանան զքեզ աւրՀնել, զքեզ գովել, քեզ մշտնջենաւոր փառաբանութիւն մատուցանել, զի ամենայն ծառայք քո են։ Զքեզ երկնի պագանեն Հրեշտակք, Հրեշտակապետք, աթոռք, տէրութիւնք, իշխանութիւնք, զաւրութիւնք, (պետութիւնք), զքեւ կան շուրջ քերովբէք բազմաչեայք եւ վեցթեւեան սերովբէք, որոց վեց

---

·եւ կնիք եւ նկարագիր անպարագրելի էութեանդ, որ յանձն իւր ցուցանէ զՀայր Համագոյ, որ նոյն ինքն է բան կենդանի, լոյս ճշմարիտ, իմաստութիւն եւ զօրութիւն յամենայնի, Աստուած յառաջ քան զյաւիտեանս.„ ուստի շատ փոխուած։ ‖42 LV "զօրութիւն։„ ‖43 W "որով եւ Հոգիդ քո սուրբ յայտնեցաւ մեզ։„ — Միայն W ունի "որ է Հոգի ճշմարտութեան, Նօֆէ ֆմօօֆօօ- ֆէօօ.„ LMV կ'ըսեն լոկ "Հոգի ճշմարտութեան։„ W այս խօսքին միացեալ մասն ալ շատ փոխեր է գրելով՝ "... Հոգի իմաստութեան եւ Հանճարոյ, եւ գիտութեան խորՀրդոյ եւ զօրութեան, եւ երկիւղի եւ աստուածպաշտութեան, որով եւ որդեգրեցաք խսկ Հօրդ երկնաւորի, եւ ընկալաք զառՀաւատչեայն պտուղ Հանդերձելոց եւ յաւիտենից բարեացն„ եւն։ — M "որդէգրութեան„։ ‖44 MV "առՀաւատչեա։„ ‖45 L"կէնդարար զօրութիւն,„ նաեւ V "զօրութիւն.„ W "որ նոյն ինքն է կենդանարար զօրութիւն, յորմէ ... (ուստի չունի "աղբիւր սրբութեան։„) — M լաւ եւս „աղբեւր։„ ‖46 V "մտաւորք„ փխ. "մտաւորք.„ W "յորմէ ամենայն բանաւոր եւ մտաւոր արարածքս զօրանան առ ի զքեզ օրՀնել„ եւն։ — LV "զօրանան ... օրՀնել։„ ‖47 W "ֆօօօֆօօֆէօ մատուցանել„ եւ ասոր կից՝ "վասն զի ամենեքին ստեղծուածք անարատ ձեռաց քոյ եմք. քեզ երկիր պագանեն ..։„ ‖49 LV "զօրութիւնք. W չունի այս բառը, չունի նաեւ W², զոր տես քիչ մ'ետքը։ — Փակագծի մէջ առնուած "պետութիւնք„ ունի միայն W², տես քիչ մ'ետքը։ ‖50 M "սէրովբէք։„ W ասնկ ունի ասկէ ետքը "զքեզ շուրջ կան օէչօֆէօ բազմաչեայք եւ վեցթեւեան օէչօֆէօ որք սաւառնաթեւեալք աղաղակեն անլռելի ձայնիւ եւ զերեքսրբեան օրՀնութիւնս մատուցանեն ասելով՝ Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զօրութեանց, լի են երկինք եւ երկիր փառօք քո։„ Ուստի W բոլորովին այլայլեր է, եւ ասկէ ետքը դարձեալ մեծ ոստում ընելով կը սկսի յառաջորդ Հատուածին սկիզբներէն շարունակել՝ "դու ստեղծեր զմարդն Հող յերկրէ„ եւն (տես Հատ. Գ.։) Սակայն ճիշտ այս մասն քիչ մ'աւելի ճշդագոյն կերպով առաջ բերուած է նոյն ձեռագրին (Թ. 51, էջ 36) ուրիշ մէկ աղօթքին՝ այսինքն Միւռոնի օրՀնութեան մէջ (զոր W² կը նշանակենք) այսպէս. "որժամնի լեցուք սուրբ սրտիւ փառաւորել զէդ Աստուած, որում երկրպագեն Հրեշտակք եւ Հրեշտակապետք, աթոռք, տէրութիւնք եւ պետութիւնք, որում առաջի կան պատուականք՝ չորեքկերպեան կենդանիքն՝ շուրջ կալով զսուրբ աթոռով փառաց քոց, բազմաղէմ եւ բազմաՀայեաց, վեցթեւեան սերովբէք եւ քերովբէք, որ երկու թեւօքն ծածկեն զերեսս իւրեանց եւ երկոքումբն ծածկեն զոտս իւրեանց եւ երկուքն թռուցեալ աղաղակեն ընկեր առ ընկեր անդադար ձայնիւ եւ անլռելի բերանովք զյաղթական օրՀնութիւն երգեն գոչելով փառաբանելով եւ ասեն. Ժողովուրդն. Ամէն. Սուրբ, սուրբ Տէր զօրութեանց, լի են երկինք եւ երկիր փառօք քո. ովսաննայ ի բարձունս. օրՀնեալ ես որ եկիր եւ գալոց ես անուամբ Տեառն. օրՀնութիւն ի բարձունս։„ ‖51 LV "թեւօքն.„ նոյն-

τῆς μελλούσης κληρονομίας, ἡ ἀπαρχὴ τῶν αἰωνίων ἀγαθῶν, ἡ ζωοποιὸς δύναμις, ἡ πηγὴ τοῦ ἁγιασμοῦ· παρ' οὗ πᾶσα κτίσις λογική τε καὶ νοερὰ δυναμουμένη σοὶ λατρεύει, καὶ σοὶ τὴν ἀΐδιον ἀναπέμπει δοξολογίαν· ὅτι τὰ σύμπαντα δοῦλα σά. Σὲ γὰρ αἰνοῦσιν ἄγγελοι, ἀρχάγγελοι, θρόνοι, κυριότητες, ἀρχαί, ἐξουσίαι, δυνάμεις, καὶ τὰ πολυόμματα Χερουβίμ, σοὶ παρίστανται κύκλῳ τὰ Σεραφίμ,[31] ἓξ πτέρυγες

նաեւ Աթորին ըստ թարգմանութեան Մասիսի (forma aequali sigillum)։ Այլապէս կարդացած չէ իր յունարէնը նաեւ երկրորդ հայերէն թարգմանութիւն կատարողը («կնիք հաւասարապատիւ»)։

26 «Բան կենդանի» բոլորովին Հայոյն յատուկ։

27 Հատուածը յն. բն. «յառաջ քան զյաւիտեանս» նախընթաց «Լուսաւոր ճշմարիտ»ին կու տան կիրառութեամբ, ինչպէս մեր Օրինակներն ալ. սակայն Բարբերինեանը կիրառելով կու տայ σοφίαյին, ինչպէս հին լատ. ալ (quae est ante saecula sapientia) ուստի հայերէնն ալ ըստ այսմ կը կիրարկենք։ «կեանք» (իմաստութիւն բառէն ետքը) կը պակսի Հայոյն, զորն որ բոլոր բնագիրք եւ թարգմանութիւնք ունին։

30 «Որով յայտնեցաւ Հոգին սուրբ» Երրորդութեան մասին ինչ ինչ կ'առնու Ս. Վարդապետը (Բարսեղ) Ս. Գրիգորի Նէոկեսարացւոյ Սքանչելագործի համբաւաւոր Ἐκθέσιςէն, որուն վրայ թէ ինք եւ թէ բոլոր Կապադովկացի Հարք մեծաւ համարմամբ լեցուն են, այնպէս Նիւսացին Գրիգոր եղբայր Ս. Բարսղի՝ ի Գրիգոր Սքանչելագործ։ Եւ գիտեն զանիկայ Յովհաննու Առաքելոյ սորվեցուցած՝ նոյն Սրբոյն հրամանաւ տալով ամենասուրբ Կոյսն Մայր Տեառն։ Ի մասնաւորի կ'ըսէ Սքանչելագործին հետ παρ' οὗ (այս ինքն յՈրդւոյ.) յայտնեցաւ. վարդապետութիւն մը՝ զորն որ գիտէին եւ կը դաւանէին մեր Հարք ալ առեն (ինչպէս ըսինք) արեւու միջօրէական պայծառութեամբ, բայց հիմա սա պատարագաւ նաեւ այնպէս աղօթելու առին։ Ուրիշ ճառի մը մէջ (որն որ հայերէն ալ թարգմանուած կայ մեր հիններէն) իրեն պատարագին մէջինին պէս կ'ըսէ Ս. Բարսեղ Սաղմոսին խօսքին վրայ՝ «Լուսոյ տուր՝ լուսով քով»։

Բայց մասնաւոր մտադրութեան արժանի է որ անիկայ Բիւզանդացւոց քով Յոյց. չհամաձայնեցան դպչելու, եւ ոչ ալ մեկնութիւնը մէջը խոթելու՝ զորն որ բուն Ἐκθέσιςին մէջ (Նիւսացւոյն քով) փոխուէ շատ յառաջ խոթած կ'երեւան։ Սքանչելագործը (Նիւսացւոյն քով) կ'ըսէ. «Յայտնեցաւ»էն ետքը δηλαδή τοῖς ἀνθρώποις («յայտ է թէ մարդկան»)։ Բայց անիկայ չունի Ռուփանոս (5ր դարուն) իրեն թարգմանած եկեղեցական պատմութեան մէջ.

ուստի իրաւամբք կ'ըսեն շատերը թէ անիկա ընդմիջարկեալ մեկնութիւն մըն է՝ զորն որ Սքանչելագործի դաւանութեան պարզութիւնը չի առնիր, այլ այլամիտ յոյն մարդու մը յանդգնութիւնն ու բառերը հոն խոթած է. (temeritatem sapiunt Graeculi schismatici.) Ահա այսպէս Բարսեղ ալ հոս ասանկ յաւելուածէն բան չի գիտեր։ Հատուած է Բարսղի եւ Գրիգորի Աստուածաբանի քով ἐκφάνεσις, effulsio իբրեւ «ելումն» կամ «յայտնութիւն», «ցոլացումն» յաւիտենական նշանակութեամբ եւ ոչ ժամանակաւոր։ Մենք ալ ունինք քանի մը թարգմանութիւն ու դաւանութեան Սքանչելագործին, ուր չի պակսիր ու սուտ մեկնութիւնը. բայց անոնք կանուխ ժամանակի թարգմանութիւնք չեն։ Ասիկա յայտնի է որ խաւարը փոխուէն շատ յառաջ Յունաց մէջ սկսած էր. ինք նոյնին հանդիսացուցիչ ու առնիչ եղաւ։ Ու եւ իցէ գիտուածի մէջ՝ նշանաւոր է որ սա Բարսղի վկայութիւնը մնացած է իր ատեղը Բիւզանդեաններէն չդպչուած՝ նաեւ ետքը։

Ասկէ ետքը Բիւզանդեան գրիչը նորէն յաւելուածով մը զարդարել ուզեր է Բարսղի Կանոնին սկիզբը. Μετὰ τούτων τῶν μακαρίων δυνάμεων, δέσποτα φιλάνθρωπε, καὶ ἡμεῖς οἱ ἁμαρτωλοὶ βοῶμεν καὶ λέγομεν. Ἅγιος εἶ ὡς ἀληθῶς καὶ πανάγιος, որուն չ'երաշխաւորեր հին հայ թարգմանութիւնը, որն որ ասկէ ետքը ալ աղօթքին յունականին մէջ աղէկ պահուած ըլլալուն գեղեցիկ կը վկայէ։ Ա՛ս վկայութիւնը չէ թէ միայն մեր երեք օրինակէն եւ հաստատածներէն՝ որոնք ժամանակաւ այլեւայլ աղօթից մէջ առնուած են, այլ նաեւ ունինք նոյն իսկ Ն դարուն առաջին կէսին մէկ ընդօրինակութենէն ինչպէս քիչ մը ետքը կը տեսնենք. որով աքանչելապէս կը վաւերանայ Յունաց քովը Բարսեղեան բնագրին ճշգութիւնը սա մասին, թէպէտ եւ Բարբերինեան Օրինակը կը թողու զմեզ վերջերը. քանի մը թուղթ փրցուած կամ ինկած ըլլալով։

31 «Հոգի որդեգրութեան», Հայն եւ Մասիսի Աս. եւ յն. «որդեգրութեան շնորհք»։

32 «Ահաւասարեալ կենաց հանդերձելոց» յն. Լսոր. «առհաւատչեայ ժառանգութեամբ հանդերձ։»

33 «Կենդանարար զօրութիւն. աղբիւր»

*թեւք միոյ եւ վեց թեւք միոյ, որք երկու թեւաւքն ծածկէին զերեսս իւրեանց եւ երկու թեւաւքն ծածկէին զոտս իւրեանց, եւ երկու թեւաւք թռուցեալ աղաղակեն մի առ մի ընկեր առ ընկեր, անհանգիստ ձայնիւ միշտ — ի ձայն — յաղթողական աւրհնութեամբք,*[34] *որք երգեն եւ գովեն,*[35] *աղաղակեն եւ ասեն.*

*Ժողովուրդն.* Սուրբ, Սուրբ, Սուրբ. Տէր զաւրութեանց, լի են երկինք եւ երկիր փառաւք քո: . . .

### ԿԱՆՈՆ

Գ. — *Քահանայն.* Սուրբ, սուրբ, սուրբ[36] *ես արդարեւ, Տէր Աստուած մեր, եւ չիք չափ մեծվայելչութեան սրբութեանդ քո. զի արդարութեամբ եւ իրաւամբք ճշմարտութեան ածեր զայս ամենայն ի վերայ մեր. որ ստեղծեր զմարդն հող յերկրէ, եւ ի պատկեր Աստուծոյ*[37] *պատուեցեր զնա, եւ եդիր զնա*[38] *ի դրախտին փափկութեան ի կեանս անմահականս եւ ի հանգիստ բարութեան.*[39] *եւ ի պահել պատուիրանացն՝ խոստացար նմա*

---

պէս նաեւ ի յաջորդս: [52] Միայն M ունի "իւրեանց" ("զոտս" բառէն ետքը:) — LV "եւ երկու թեւօքն թռուցեալ:" ‖[53] L "աղաղակէին մի առ մի" եւն: ‖[54] Ձեռագրաց մէջ "միշտ" բառն յաջորդ նախադասութեան կը կցուի՝ այսպէս . . . "անհանգիստ ձայնիւ — (ունի լոկ L, MV հոս չունին խորագիր մը) — միշտ յաղթողական . . . :" — LV "օրհնութեամբք: — MV "որք երգեն եւ . . . (V . . .), գովեն . . . :" — "գովեն" թերեւս պէտք է ուղղել "գոչեն:" ‖[56] "Ժողովուրդ" բառին տեղ ձեռագիրք կ՚ըսեն "Դպիրքն:" — MV "լի" բառով կը լմցընեն տողն՝ ենթադրելով ծանօթ իբրեւ ծանօթ: W հոս L ձեռագրի չափ ունի՝ մինչեւ "փառօք քո." իսկ W² լրացուցեր է նոր պատարագէ:"

Գ. ‖[59] MV "Քահանայն աղօթէ" (M աղաւթէ:) ‖[60] LV "զի արդարութեամբք:" ‖[61] L "իրաւամբք ճշմարտութեան." MV "իրաւամբք ճշմարտութեամբ:" — Սա խօսքով "որ ստեղծեր զմարդն" եւն կը սկսի Բիւզանդեայ բաւացի ընդօրինակած մասն, այսպէս. (Ե, իը, էջ 223) "Տէր Աստուած զօրութեանց, որ արարեր զամենայն յոչնչէ, (տես վերը՝ տող 3) . . . եւն. վերջինս քիչ մ՚ետքն է (տես վարը՝ տող. 65), որով Բիւզանդ քանի մը տող դուրս թողուցած է: — Հոս կը սկսի նմանապէս W չարունակել (տես վերը՝ Ծան. ի տող. 50) ընթեռնլով՝ "դու ստեղծեր զմարդն հող յերկրէ, . . . ի պատկեր . . . :" ‖[62] W "Եւ ի պատկեր քո բարերարութեանդ՝ պատուեցեր զնա:" ‖[63] M "եդեր զնա:" — W սանկ կը կարդայ. "Եւ եդիր զնա յԱդենական դրախտին փափկութեան ի կեանս անվախճանս եւ եւ ի հանգիստ բարութիւնս." (այսպէս:) [64] L չունի MVW ձեռագրաց սա նախադասութիւնն՝ "եւ ի պահել պատուիրանացն (W պատուիրանին) խոստացար նմա տալ զառաւել փառս." (W "խոստացար նմա զմշտնջենաւոր կեանս եւ զանապականութիւն":) F տեսանք որ չունի

կ՚երեւայ օկիզք աուած ժամագրոց (Քրդ. Ողորմեա եւ ի նեղութեան կանանց) ան աղօթքին՝ որն որ նոյնպէս կր սկսի՝ եղանակաւորութեամբ. | ինչպէս կ՚երեւայ, Մանդակունայն ի վերայ աղօթից Սահակայ:

[34] "Օրհնութեամբք" հիմնական յոյժ

*τῷ ἑνί, καὶ ἓξ πτέρυγες τῷ ἑνί, καὶ ταῖς μὲν δυσὶ κατακαλύπτουσι τὰ πρόσωπα ἑαυτῶν, ταῖς δὲ δυσὶ τοὺς πόδας, καὶ ταῖς δυσὶ πετόμενα, κέκραγεν ἕτερον πρὸς τὸ ἕτερον ἀκαταπαύστοις στόμασι, ἀσιγήτοις δοξολογίαις.*[35] — ***Ἐκφώ[νως ὁ ἱερεύς.]*** *Τὸν ἐπινίκιον ὕμνον ᾄδοντα, βοῶντα, κεκραγότα, καὶ λέγοντα.*

***Ὁ χορός.***[36] *Ἅγιος, [ἅγιος, ἅγιος, Κύριος Σαβαώθ, πλήρης ὁ οὐρανὸς καὶ ἡ γῆ τῆς δόξης σου, ὡσαννὰ ἐν τοῖς ὑψίστοις. Εὐλογημένος ὁ ἐρχόμενος ἐν ὀνόματι Κυρίου. Ὡσαννὰ ἐν τοῖς ὑψίστοις.]*

***[Κἀνταῦθα ὁ διάκονος τὰ αὐτὰ ποιεῖ τῇ τοῦ Χρυσοστόμου λειτουργίᾳ.]***

***Ἐπεύχεται μυστικῶς ὁ ἱερεύς.***[37]

*IV. Μετὰ τούτων τῶν μακαρίων δυνάμεων, δέσποτα φιλάνθρωπε, καὶ ἡμεῖς οἱ ἁμαρτωλοὶ βοῶμεν καὶ λέγομεν. Ἅγιος εἶ ὡς ἀληθῶς καὶ πανάγιος, καὶ οὐκ ἔστι μέτρον τῇ μεγαλοπρεπείᾳ*[38] *τῆς ἁγιοσύνης σου, καὶ ὅσιος ἐν πᾶσι τοῖς ἔργοις σου, ὅτι ἐν δικαιοσύνῃ καὶ κρίσει ἀληθινῇ πάντα ἐπήγαγες ἡμῖν. Πλάσας γὰρ τὸν ἄνθρωπον χοῦν λαβὼν ἀπὸ τῆς γῆς, καὶ εἰκόνι τῇ σῇ ὁ Θεὸς τιμήσας αὐτόν, τέθεικας αὐτὸν*[39] *ἐν τῷ παραδείσῳ τῆς τρυφῆς, ἀθανασίαν ζωῆς, καὶ ἀπόλαυσιν αἰωνίων ἀγαθῶν ἐν τῇ τηρήσει τῶν ἐντολῶν σου ἐπαγγειλάμενος*

---

[34] Կ'երեւայ թէ Barb. այսպէս կը կարդայ· *καὶ σοὶ παρίστανται κύκλῳ τὰ πολυόμματα Χερουβίμ . . . καὶ ταῖς δυσὶ τοὺς πόδας.* [35] Barb. *στόμασιν . . . θεολογίαις.* [36] Barb. *ὁ λαός.* [37] Barb. *Ὁ ἱερεὺς λέγει μυστικῶς.* [38] Barb. *τῆς μεγαλοπρεπείας.* [39] Այսպէս Barb. սովորականը *τιμήσας τέθεικας ἐν τῷ . . .*

*δοξολογίαις* (փառաբանութեամբք), նոյնպէս հին լատինը doxologiis, բայց Բարբերինեան բնագիրը *θεολογίαις* (աստուածաբանութեամբք)։

[35] «Երգեն եւ օրհնեն, գոչեն», կ'ըսէ Մանաքոնեան Օրինակը, բայց «օրհնեն» չունի Լուգդունեանը եւ իրաւամբք, վասն զի կը խանգարէ *ᾄδοντα, βοώντα, κεκραγότα καὶ λέγοντα* ըստ չորից կերպից կենդանեաց։ Կը յաջորդէ Նախերգանքին բուն կամ յատկապէս ըսուած Կանոնը եւ Յիշատակները՝ որոնք, գլխաւորաբար երկու առաջինք, ամբողջ պահուած են հին թարգմանութեան մէջ, կը հաւաստեն Բարսղի պատարագին հարազատութիւնը յայսմ մասին՝ որն որ բուն մարմինն է. անդէն անդէն վերածելով միանգամայն յունարէնն իր նախնական ձեւին ի ձեռն հայկականին, մինչ ի բաց առնլով հայերէնին սակաւաթիւ մանր սեպհականութիւնները, որոնց համար դժուարաւ ի պատասխանատուութիւն կրնայ կոչուիլ հիմակուան յունական բնագիրը։

Դ. [36] Հոս ալ՝ 3 «Սուրբ»ով կը սկսի քահանային աղօթքը։

— *καὶ ὅσιος ἐν πᾶσι τοῖς ἔργοις σου* կը պակսի հայերէնին. ո՛վ կրնայ հաստատել թէ սկզբնական ըլլայ այս մասնիկը։

[37] Յն. *Εἰκόνι τῇ σῇ ὁ Θεός* (ի պատկեր քո, Աստուած) այսպէս եւ հին լատինն։ Ասորին Մարեայ չունի «Աստուած»։

[38] «Պատուեցեր զնա, եւ եդիր զնա». հաստատ յոյնը առ դերանունները չունի. բայց Բարբերինեանը, ինչպէս նաեւ հին լատինն ունի. առաջին անգը նաեւ Ասորին Մարկոսի։

[39] «Ի հանդերձեալ բարութեան (գուցէ «բարութեանց»), եւ ի պահել պատուիրանացդ խոստացար տալ նմա զառաւել փառս». յն. «Զվայելս յաւիտենական բարութեանց ի պահպանութեան պատուիրանաց քոց խոստացեալ նմա», հին լտ. delectationem aeternorum bonorum promisisti ei. «Հանգիստ» բառը յայտնի է որ ունի հոմանիշ, վայելչ նշանակութիւն. *ἀπόλαυσις*, հին լտ. delectatio. «Զվայելս յաւիտենական բարութեանց», չունի Ասորին Մարկոսի։ «Եւ ի պահել պատուիրանացդ խոստացար տալ նմա զառաւել փառս» կը պակսի ամբողջ Լուգդունեան Օրինակին մէջ։

*տալ զառաւել փառս։ Այլ զի անցին[40] զպատուիրանաւ քո, Ճշմարիտդ Աստուած, եւ անկան ի պատրանս խաբէութեան աւձին, մատնեցան ի մահ իւրեանց պատուիրանազանցութեամբն, արդար դատաստանաւդ քո մերժեցեր զնոսա ի դրախտէն փափկութեան յայս աշխարհ, եւ դարձան անդրէն ի հող՝ ուստի ստեղծան։ Սակայն ոչ թողեր ի ձեռանէ,[41] բարերարդ Աստուած. այլ տեսչութեամբ եւ շնորհաւք Միածնիդ քո վերստին ծննդեամբ նորոգեցեր զստեղծուածս քո. եւ բազում կերպարանաւք այցելու եղեր արարածոց քոց. առաքեցեր մարգարէս, արարեր զաւրութիւնս ազգի ազգի ի ձեռն սրբոց քոց՝ որք յազգս յազգս իւրեանց[42] հաճոյ եղեն առաջի քո.[43] ետուր[44] զաւրէնս յաւգնականութիւն,[45] առաքեցեր հրեշտակս վերակացուս։[46] Իսկ իբրեւ եկն կատարած ժամանակաց,[47] խաւսեցար ընդ մեզ Միածնին Որդւովդ քո՝ որով զաշխարհս արարեր, որ է լոյս[48] փառաց եւ նկարագիր էութեան քո*

---

*ու եւ նախորդ խօսքն։* ‖65 *Աւ սկսի* F *ամէնէն շեղելով՝ այսպէս. «եւ անցին զքոյով պատուիրանօքդ, եւ անկան ի մահ իւրեանց պատուիրանազանցութեամբն», ուստի* F *ի քով դուրս մնացած են «Ճշմարիտդ Աստուած» (զոր չունի նաեւ* W) *եւ «ի պատրանս խաբէութեան օձին, մատնեցան» բառերը։* ‖66 LVW *«օձին.»* — W *«այս եւ մահկանացու եղեն իւրեանց կամաւոր պատուիրանազանցութեամբն։»* ‖67 F *«արդար դատաստանօքդ քովք» են.* W *«զորս արդար դատաստանաւ քո մերժեցեր ի դրախտէն (այսպէս) փափկութեան յաշխարհս այս։»* ‖68 *Այս խօսքն «եւ դարձան անդրէն ի հող» չունի* F, *որ սանկ կ'ընթեռնու «...յայս աշխարհէ, ստորի ստեղծեր (փխ. «ուստի ստեղծան։»)* W *այլայլած՝ «որ եւ (այսինքն մարդն) սահմանեցաւ նոցա ի քումէ բարերարութենէդ դառնալ անդրէն ի հող յորմէ ստեղծան։»* ‖69 LV *«բարերարդ Տէր» կ'ըսեն փխ «բարերարդ Աստուած», ինչպէս ունի* M, *զոր կը հաստատէ Բուզանդ որ նախ տող մ'ալ ունի՝ «Եւ գրաւեցան լինել ընդ մահապարտութեամբ, սակայն ոչ թողեր ի ձեռանէ, բարերարդ Աստուած, այլ...։»* W *այլայլած՝ «Սակայն ի վերայ այսր ամենայնի ոչ անտես արարեր ողորմածդ Աստուած զգործ ձեռաց քոց, այլ...։»*

‖70 LVF *շնորհօք։»* — M *«ծընընդեամբ.»* L *«ծնընդեամբ։»* F *բառական «այլ տեսչութեամբ եւ շնորհօք միածնիդ քո վերստին ծննդեամբ նորոգեցեր զստեղծուածս քո. եւ բազում կերպարանօք այցելու եղեր արարածոց քոց։»* W *ընդհակառակն փոխեր է եւ կ'առնու յաջորդ շատ տողերու վրայէն՝ այսպէս՝ «այլ հայրախնամօղ ողորմութեամբ քո գթացար յազգս որդւոց մարդկան, եւ առաքեցեր զՈրդիդ քո սիրելի զծոցածինդ եւ զէակիցդ եւ զփառակիցդ, որ էջեր՝ եկն լրումն ժամանակի...» (վերջինս տես վարը՝ տող. 75։)* ‖72 F *«առաքեցեր զմարգարէս. արարեր զօրութիւնս ազգի ազգի նշանս ի ձեռն սրբոց քոց, որք յազգս ազգս իւրեանց հաճոյ եղեն առաջի քո։»* — LV *«արարեր զօրութիւնս.»* = F. *իսկ «նշանս» Բուզանդայ աւելարանութիւնն է։* ‖73 *Այս տողն «որք ... առաջի քո՝» դրինք ըստ Բուզանդայ,* LMV *սանկ կը կարդան՝ «որ յազգս իւրեանց հաճոյ եղեւ առաջի աստուածութեանդ քո։»* — M *«ետուր աւրէնս յաւխտենականս.»* LV *«ետուր օրէնս յօգնականութիւն.» Բուզանդ ալ ընթերցումը կը հաստատէ՝ «ետուր զօրէնս յօգնականութիւն, առաքեցեր հրեշտակս վերակացուս։»* ‖75 *«կատարած ժամանակաց» դրինք ըստ Բուզանդայ,* MLV *«ժամանակին։»* — W *ամբողջն այլայլեր է՝ «որ՝ իբրեւ եկն լրումն ժամանակի ըստ կանխասաց մարգարէին գուշակելոյ, եկն կամաւ քո, եւ զգեցաւ մարմին յանարատ կուսէն Մարեմայ աստուածածնէն եւ ճանապարհորդեաց ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս, վասն զի յերկիր երեւեցաւ» են*

*αὐτῷ. Ἀλλὰ παρακούσαντά σου*[40] *τοῦ ἀληθινοῦ Θεοῦ, τοῦ κτίσαντος αὐτὸν, καὶ τῇ ἀπάτῃ τοῦ ὄφεως ὑπαχθέντα νεκρωθέντα τε τοῖς οἰκείοις αὐτοῦ παραπτώμασιν, ἐξώρισας αὐτὸν ἐν τῇ δικαιοκρισίᾳ σου, ὁ Θεὸς, ἐκ τοῦ παραδείσου εἰς τὸν κόσμον τοῦτον, καὶ ἀπέστρεψας εἰς τὴν γῆν, ἐξ ἧς ἐλήφθη, οἰκονομῶν αὐτῷ τὴν παλιγγενεσίας σωτηρίαν τὴν ἐν αὐτῷ τῷ Χριστῷ σου. Οὐ γὰρ ἀπεστράφης τὸ πλάσμα σου εἰς τέλος, ὃ ἐποίησας, ἀγαθὲ, οὐδὲ ἐπελάθου ἔργα χειρῶν*[41] *σου, ἀλλ' ἐπεσκέψω πολυτρόπως διὰ σπλάγχνα ἐλέους σου. Προφήτας ἐξαπέστειλας, ἐποίησας δυνάμεις διὰ τῶν ἁγίων σου τῶν καθ' ἑκάστην γενεὰν εὐαρεστησάντων σοι. Ἐλάλησας ἡμῖν διὰ στόματος τῶν δούλων σου τῶν προφητῶν, προκαταγγέλλων ἡμῖν τὴν μέλλουσαν ἔσεσθαι σω-*

---

[40] Barb. *παρακούσαντός σου . . . νεκρωθέντα τε αὐτὸν . . . ἀπέστρεψας αὐτὸν . . . τὴν ἐκ παλιγγενεσίας σωτηρίαν . . .* [41] Barb. *ἔργων χειρῶν . . . σπλάγχνα . . . γενεὰν καὶ γενεάν.*

(վերջինս տես վարը՝ տող. 79, ուստի հանատօտ է W.) ‖[76] Բուզանդ այս խօսքերը սանկ ունի. F. «որ է պտղինք (փխ. «լոյս» LMV) փառաց «հօ («քոց» չունին LMV) եւ կերպարանք (LMV «նկարագիր») էութեան քո եւ կրէ զամենայն բանիւ զօրութեանն (M զաւրութեան իւրոյ. LV զօրութեան իւրոյ.) որ ոչ ինչ յափշտակեաց զկալան Հօրն զհաւասարութիւնն համապատիւ անձին», այլ. . . . (MLV «որ ոչինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Աստուծոյ.» մի-

40 «Անցին զպատուիրանաւ քո». տակէ եարը Լուգդ. Օրինակին մէջ յոգնականի կը փոխէ Հայը։

41 «Ոչ թողեր»էն մինչեւ «զանեղծուածս քո» կամ մանաւանդ մինչեւ «արարածոց քոց» յետեւատաղութիւնք համեմատութեամբ յունին՝ որուն ճշգիւ համաձայն է հին լտ. եւ Ասորին Մաստոսի։

— *εἰς τέλος* (ի սպառ) եւ *χειρῶν* (ձեռաց) բառերը մինակ կը պակսին Հայուն, առանց իմաստի փոփոխութեան։

— *ἀγαθέ*, կը կարդայ կամ թարգմանէ իբրեւ *Θεὲ ἀγαθέ*, ճիշդ այսպէս է բովանդակ հատուածը նաեւ փաստատեան Հատուածին մէջ, ուստի անհնեւին նախնական թարգմանութիւնը եւ ոչ բառիւ մը հոս պղլպղած է անցման ժամանակաց։

42 Մեր կրկին Օրինակք ալ «որք յազգս իւրեանց հաճոյ եղեալ». եթէ փաստատեան Օրինակին հարցնենք. պիտ՛որ ըլլայ «որք յազգս ազգս իւրեանց», եւ աս վերջինն է հայուն նախնական ընթերցուածը. վասն զի թէպէտ հիմնական յոյն բնագիրը կարդայ *καθ' ἑκάστην γενεάν*, բարբերինեան Օրինակն ունի *καθ' ἑκ. γενεὰν καὶ γενεάν*, ինչպէս հին լտ. թարգմանութիւնն ալ per singulas generationes et generationes. Հայուն յատուկ կը մնայ կրկնանքը, որն որ նախնական կը ցուցնէ՝ փաստատեանն ալ զնոյնն ունենալով։

43 «Առաջի քո», մեր կրկին Օրինակք ալ «առաջի աստուածութեանդ քո». ընթերցուած մը՝ որն որ կրնայ բաւական հին ըլլալ, բայց ոչ նախնականը՝ զորն որ հոս ալ փաստ. ունի, համաձայն որ եւ իցէ յն. Օրինակի եւ թարգմանութեան՝ որոնց մէջ «աստուածութեան» ձայնը չի տեսնուիր։

44 Հոս է այն պարբերութիւնն որ հիմնական ոչ եւ իցէ յոյն Օրինակի եւ (մեր այս եւ սոյն թարգմանութեանս պատ) ոչ եւ իցէ թարգմանութեան՝ նաեւ երկրորդ հայերէն թարգմանութեան մէջ, գրեթէ կրկնաբանութեամբ. ուրիշ պատարագէ (այս ինքն հետեւեալ մեր իբրեւ Բ նշանակածէն) առնուած է։ Աս պարբերութեան վրայ տես վարը։ Մեր կրկին Օրինակներն ալ միաբան են՝ երաշխաւորուած յայսմ փաստատեան Օրինակէն. («Եւ բազում. . . փառաց իւրոց». հմմտ. Բուզ. 223—224։)

45 Մանուքեան Օրինակը «յաւիտենականս». որն որ յայտնի խանգարմամբ ձեւացած է։

46 Նաեւ փաստ. այսպէս. բայց յն. ինչպէս նաեւ հին լտ. եւ Ա. Մաս. «պահապանս» *φύλακας*, custodes.

47 «Ժամանակաց» ըստ փաստ. Օր. որն որ յն. (նաեւ Բարբ. Օրինակին) եւ Ա. Մաստ. համաձայն է. մեր կրկին Օրինակները «ժամանակիս», հին լտ. temporis.

48 «Լոյս» մեր Օրինակք. փաստ.՝ «պատկեր». յն. *ἀπαύγασμα* («լոյս, ճառագայթ»)։

եւ կրէ զամենայն բանիւ զաւրութեան իւրոյ,[49] որ ոչինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Աստուծոյ, այլ Աստուածն յաւիտենական[50] յերկրի երեւեցաւ եւ ընդ մարդկան շրջեցաւ, ի սրբոյ Կուսէն մարմնացաւ,[51] զկերպարանս ծառայի էառ,[52] եւ եղեւ ի նմանութիւն մարմնոյ[53] տկարութեանս մերոյ, զի զմեզ արասցէ նմանակից[54] փառաց իւրոց: Զի ի մարդոյ մտին մեղք յաշխարհ եւ ի մեղաց անտի մահ, հաճութեամբ քո եւ կամաւք՝ Միածինն[55] Աստուած՝ որ է ի ծոց Հաւրդ, եղեւ ի կնոջէ,[56] եւ դատապարտեաց զմեղս ի մարմնի, զի որ յԱդամայ մեռեալքն էին՝ կենդանասցեն[57] ի Քրիստոս. եւ վարեցաւ[58] յաշխարհիս յայսմիկ, եւ ետ մեզ զկենդանարար եւ զփրկութեան պատուիրանս.[59] փրկեաց ի մոլորութենէ կռապաշտութեան,[60] եւ ած զմեզ ի գիտութիւն ճշմարիտ Աստուծոյ մերոյ.[61] ստացաւ զմեզ ժողովուրդ սեպհական, ի թագաւորութիւն, ի քահանայութիւն, յազգ սուրբ. լուաց ի ջուրս[62] աւազանին, եւ սրբեաց Հոգւովն սրբով. եւ

այն V “հաւասար Հօր Աստուծոյ.” զոր կը հաստատէ Բուզանդ:) ||79 L “է յերկրի երեւեցաւ” զոր կը հաստատէ Բուզանդ (F) “այլ Աստուածն յաւիտենական ի յերկրի երեւեցաւ, ընդ մարդկան շրջեցաւ.” ուստի չունի “ընդ”ն նախադրութենէ յառաջ “եւ:” W այլակերպ՝ “վասն զի յերկրի երեւեցաւ եւ ընդ մարդկան շրջեցաւ Աստուածն յաւիտենական, որ փրկեացն զմեզ ի խաւարային կռապաշտութենէ կամաւոր չարչարանօքն եւ անապական թաղմամբն եւ լուսափայլ եւ կենսաբեր յարութեամբն, եւ ստացաւ զմեզ իւր ժողովուրդ” եւն, ուստի մեծ կտոր մը դուրս թողած է. (տես յաջորդները՝ տող 87): — L միայն՝ “ե– ի սրբոյ կուսէն:” ||80 “Էառ” դրինք լաւ եւս ըստ Բուզանդայ, որ կ'րսէ “ի սրբոյ կուսէն մարմնացաւ, զկերպարանս ծառայի էառ.” LMV “զկերպարանս . . . չէհցաւ:” Բուզանդ չունի “մարմնոյ,” այսպէս՝ “եւ եղեւ ի նմանութիւն տկարութեանս մերոյ:” — Յաջորդն ալ լաւ եւս է Բուզանդ՝ F “զի արասցէ զմեզ նմանակից փառաց իւրոց.” LMV “զի զմեզ արասցէ նմանակից մարմնոյ փառաց իւրոց:” ||81 Այս “զի ի մարդոյ մտին մեղք” տողէն սկսեալ Բուզանդ դուրս թողուցած է մեծ հատուած մը՝ մինչեւ Ը, տող 128, եւ սա քանի մը տողի մէջ ամփոփած՝ F “Զի յամենայն դայթակղութեանց եւ յամենայն մոլորութենէ փրկեցեր զմեզ. եւ բարձեր յամենայն երկրէ զանյուսութիւն թերահաւատութեան, եւ ետուր զլուսոյ հաւատս ամենայն քոց արարածոց, որոց եւ զնմանութիւն պատկերի կերպարանաց քոց շնորհեցեր: Եւ հաւատովքն, զոր ետուր զօրանալ ի մարդիկ, զամենեսեան առ հասարակ միանգամայն կեցուցեր շնորհելով. զի ոչ եթէ վասն արդարութեանց ինչ մերոց ....” (վերջինս՝ տես Ը, տող 128:) ||82 LV “կամօք:” ||83 Ձեռագիրք (MLV) “Միածինդ Աստուած որ է (V չունի “է”) ի ծոց Հօրդ” (M Հաւրդ:) 84 M “յԱդամա:” — L “. . մեռեալն էին” (փխ. “մեռեալքն:”) ||85 Բոլոր ձեռագիրք (MLV) սխալմամբ կ'ընթեռնուն “եւ մերոցան (փխ. “վարեցաւ”) յաշխարհէս (փխ “յաշխարհիս.”) սխալը կը ցուցընէ նաեւ յաջորդ “յայսմիկ” հոլովը. — LV “զկենարար” փխ. “զկենդանարար:” Հմմտ. Բուզանդայ խօսքն “յամենայն դայթակղութեանց եւ յամենայն մոլորութենէ փրկեցեր զմեզ:” ||87 Դարձեալ կը սկսի W այսպէս՝ “եւ ստացաւ զմեզ իւր ժողովուրդ սեպհական ի թագաւորութիւն, ի քահանայութիւն եւ յազգ սուրբ:” ||89 M միայն “ի ջուրս սուրբ աւազանին.” LV “ի ջուր”. W “եւ լուաց ջուրբ սուրբ աւազա-

49 “իւրոյ” չունի Փաւստոս, այլ “բանիւ զօրութեան”, էջ 223:

50 “Յաւիտենական” նաեւ Փաւստ. վասն զի յունին προαιώνιος մեր հնագոյն լեզուին՝ սրբոն

τηρίαν· νόμον ἔδωκας εἰς βοήθειαν· ἀγγέλους ἐπέστησας φύλακας. Ὅτε δὲ ἦλθε[42] τὸ πλήρωμα τῶν καιρῶν, ἐλάλησας ἡμῖν ἐν αὐτῷ τῷ υἱῷ σου, δι' οὗ καὶ τοὺς αἰῶνας ἐποίησας. Ὃς ὢν ἀπαύγασμα τῆς δόξης σου, καὶ χαρακτὴρ τῆς ὑποστάσεώς σου, φέρων τε τὰ πάντα τῷ ῥήματι τῆς δυνάμεως αὐτοῦ, οὐχ ἁρπαγμὸν ἡγήσατο τὸ εἶναι ἴσα σοὶ τῷ θεῷ καὶ πατρί· ἀλλὰ θεὸς ὢν προαιώνιος, ἐπὶ τῆς γῆς ὤφθη, καὶ τοῖς ἀνθρώποις συνανεστράφη, καὶ ἐκ παρθένου ἁγίας σαρκωθείς, ἐκένωσεν ἑαυτὸν μορφὴν δούλου λαβών, σύμμορφος γενόμενος τῷ σώματι τῆς ταπεινώσεως ἡμῶν, ἵνα ἡμᾶς συμμόρφους ποιήσῃ τῆς εἰκόνος τῆς δόξης αὐτοῦ. Ἐπειδὴ γὰρ δι' ἀνθρώπου ἡ ἁμαρτία εἰςῆλθεν εἰς τὸν κόσμον, καὶ διὰ τῆς ἁμαρτίας ὁ θάνατος, εὐδόκησεν[43] ὁ μονογενής σου υἱός, ὁ ὢν ἐν τοῖς κόλποις σου τοῦ θεοῦ καὶ πατρός,

[42] Barb. ἦλθεν. [43] Barb. ηὐδόκησεν.

ան Թարգմանութիւնը կը վերաբերի, չի տանիր համձարը՝ "Նախայաւիտենական" ըսել. Մաշտոցի Աւորին ալ Հայուն պէս ըրած է։ Այսպէս եղած է մեր պատարագին Թարգմանութեան ժամանակակից՝ աւետարանական բնագրին մէջ ալ՝ որուն աս խօսքը կը վերաբերի։ Սակայն երկրորդ հայ Թարգմանութիւնը ուզելով համապատասխանել յունին, կ'ըսէ "Աստուած գոլով նախքան զյաւիտեանս"։

51 "Մարմնացաւ". հոս կը յաւելուն յն. եւ հին լտ. եւ Ա. Մաս. ἐκένωσεν ἑαυτόν, "ունայնացոյց զանձն", զորն որ մերինները չունին եւ ոչ Փաւստոս իսկ։

53 Հոս կը կարդան մեր Օրինակք "զգեցաւ", որն որ հին ընթերցուած մըն է անշուշտ, բայց ոչ այնչափ հին որչափ Փաւստոսինը՝ որն որ ան տեղն կը կարդայ "էառ", ինչպէս որ եւ իցէ յն. բնագիր, հին լտ. եւ Մաս. Ա. ունին։

53 "Մարմնոյ". հոս յն. հին լտ. եւ Մաս. Ա. ասոր տեղ ունին "պատկերի". Փաւստ. ոչինչ։

54 Փաւստ. "նմանակիցս"։ Անկէ ետքը կը թողու զմեզ Փաւստոս, մինչեւ որ որոշ տեղ մը գտնենք զարձեալ զինքը։

55 "Հաճութեամբ քո եւ կամօք Միածինն". յն. ինչպէս ուրիշ Թարգմանութիւնք ալ, ունին հոն εὐδόκησεν ὁ μονογενής ... Beneplacuit Unigenito ... կ'երեւայ որ առաւել երկիւղածութիւնը ետքէն Յունաց առանկ փոխել տուած է սկզբնական εὐδοκήσει σου ὁ μον. վասն զի հայերէնը ճիշդ աս վերջնոյն Թարգմանութիւնն է կրկնակ բառերով՝ ըստ հնագոյն լեզուին բերման։

56 "Ի կնոջէ". հոս որ եւ իցէ յն. բնագրի, նաեւ Բարբ. մէջ. արդէն աւելցուած է τῆς ἁγίας Θεοτόκου καὶ ἀεὶ παρθένου Μαρίας. Այսպէս հին լտ. ալ։ Նոյնպէս մեր երկրորդ հայերէն Թարգմանութիւնը։ Մեզի կ'երեւայ որ շատ յաջող կերպով զետեղուած չեն երկնից Թագուհւոյն պատշաճաւոր յարգութեան ան խօսքերը. գուցէ քիչ մը վերն "ի կուսէն" ըսուած տեղը իր յարմարագոյն տեղն էր։ Միայն առաջիկայ հին հայ Թարգմանութիւնն է որ բնագրին սկզբնական վիճակը կ'երեւցընէ, իրեն բարձր հնութիւնն նաեւ այսու շօշափելի ընելով։

57 "Կենդանացան ի Քրիստոս", յն. "կենդանացին (հին լտ. կենդանացաւք) նովին Քրիստոսիւ քով"։ Մեր երկրորդ Թարգմանութիւնը "Կենդանացան Որդւով քով Քրիստոսիւ"։

58 Կրկին Օրինակնիս ալ արդէն ագիտութեամբ խանգարուած Օրինակէ կ'ընդօրինակեն՝ "վերացաւ յաշխարհէս յայսմիկ". ուղղեցինք, ինչպէս նախընթաց եւ հետեւող խօսքերը՝ եւ մանաւանդ անփոփոխէս եկող "յայսմիկ"ը կ'ուզէ։ Խեղճ փոխողը այնչափին չէ հասած որ ցուցականն ալ համաձայնցընէ նախընթացին՝ հոլովով։

59 Ճառ անգամ յիշուած հնագոյն հայ լեզուին բերման համեմատ՝ ըսուած է "զկենդանարար եւ զփրկութեան (պատուիրանս)", ուր յն. միայն "փրկութեան" (προστάγματα) σωτηρίας։

60 "Կռապաշտութեան", յն. "կռոց", ինչպէս մեկալ Թարգմանութիւնք ալ։

61 "Աստուածոյ մերոյ", յն. եւ հին լտ. եւ Մաս. Ա. "Աստուծոյ եւ Հօրդ", Այսպէս երկրորդ հայ Թարգմանութիւնն ալ։

62 "Ի ջուրս աւազանին" ըստ Մանաք. Օրինակին, որն որ մեզի նախնական հայ բնագիրը կ'երեւայ։ Լուգդ. Օր. "ի ջուրս սուրբ աւազանին", Յն. միայն "ի ջուր". Նոյնպէս հին լտ. եւ Մաս. Ա.։ "ի ջուրս"ին վերջին գրէն "սուրբ" կազմուած պիտ'որ ըլլայ Լուգդ. Օրինակին մէջ։

զանձն ի մահ, եւ փրկեաց զամենայն վտանգեալս ի մահուանէ[63]. յորում արգելեալ եւ պաշարեալ[64] կային վասն մեղաց մերոց. էջ ի դժոխս մահուամբ[65] խաչի մարմնով իւրով,[66] զի կատարեսցէ ինքեամբ զամենայն, յարեաւ յաւուր երրորդի, եւ արար ճանապարհ ամենայն մարմնոյ.[67] զի ոչ իսկ էր հնար արգելուլ ընդ ապականութեամբ զառաջնորդն կենաց. եւ վերացաւ[68] յերկինս, եղեւ պտուղ ննջեցելոց եւ անդրանիկ ի մեռելոց, զի եղիցի յամենայնի ինքն յառաջացեալ. նստաւ ընդ աջմէ մեծութեանն ի բարձունս. որ գայն եւ հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործոց իւրոց. եւ եթող մեզ յիշատակ փրկութեան զչարչարանացն[69] իւրոց զայս՝ զոր եդեալս է առաջի:[70] Զի յորժամ կամաւք իւրովք[71] գայր ի մահ, ի գիշերին՝ յորում մատնէր զանձն իւր ի մահ վասն կենաց եւ փրկութեան[72] ամենայն արարածոց,[73] կոչեաց առ ինքն զաշակերտսն իւր, առեալ հաց ի սուրբ յանարատ յանապական յամենազաւր[74] ի ձեռս իւր, ցուցեալ քեզ Հաւր եւ Աստուծոյ,[75] աւրհնեաց, գոհացաւ,[76] եբեկ, ետ իւրոց ընտրեալ եւ բազմեալ աշակերտացն եւ առաքելոցն ասելով.

---

նաւն։" ‖ 90 W առ եւ յաջորդները ասնկ կ'ամփոփէ. "եւ արար բնակարան եւ օթեւան Հոգւոյն սրբոյ, համբարձաւ յերկինս եւ նստաւ ընդ աջմէ մեծութեան ի բարձունս, եւ զաւրեխնամօղ եւ զէակից եւ զմշտնջենակից Հոգւին սուրբ։" Հոս կը լմննայ W ի այն մասն, որ համեմատելի էր. — M "վտանգեալս." LV "վտանկեալս։" ‖ 95 MLV չունին "եւ վերացաւ յերկինս։" ‖ 96 LV ունի "մեծութեանն". M յաւ. եւս "մեծութեանդ։" ‖ 98 LV "զչարչարանաց իւրոց զայս . . .։" ‖ 99 LV "կամօք։" ‖ 101 V սխալմամբ "առեալ հաց մի սուրբ . . ." ‖ 102 LV "յամենազօր ձեռս իւր"։ — LV "Հօր։" ‖ 103 Ձեռագիրներն "օրհնեաց" բառին վրայ † խաչանիշը կը դնեն իբրեւ խորագիր-նշան։ — LV "ետ . . ."։

63 Առանց նոր իմաստի յարատարար (per paraphrasim) թարգմանուած է՝ "Ետ զանձն ի մահ, եւ փրկեաց զամենայն վտանգեալս ի մահուանէ", առանց փոխադրելով յն. բնագրին բառը՝ ἔδωκεν ἑαυτὸν ἀντάλλαγμα τῷ θανάτῳ, հին լտ. dedit se ipsum commutationem morti. Երկրորդ հայ թարգմանութիւնը՝ "ետ զանձն փոխանակ մահու"։

64 Յն. եւ այլ թարգմանութիւնք. "վաճառեալք"։

65 "Մահուամբ", յն. եւ այլ թարգմանութիւնք "ի ձեռն"։

66 "Մարմնով իւրով" յատուկ կը մնայ Հայոյն. "եղած զերկուեա մահու" կ'աւելցնէ հոս յոյնը՝ ձայնակցելով հին լտ. թարգմանութեան. բայց մեր Օրինակները չունին. եւ ոչ Մաս. Աս. մէջ կը տեսնենք։

67 'Ամենայն մարմնոյ" զորն որ մեր Օրինակներն ունին. հասարակ յն. բնագրին կը պակսի. բայց Բարբերինեանը կու տայ πάσῃ σαρκί, հին լտ. եւ Մաս. Աս. ալ ձայնակցելով։ 'Ամենայն մարմնոյ"ի կը հետեւի "ի մեռելոցն յարութիւն", յն. եւ արեւելեան թարգմանութեան մէջ։

68 "Եւ վերացաւ յերկինս", (զորն որ մեր Օրինակք չունին). յն. բնագրին եւ ամենայն թարգմանութեանց, նաեւ երկրորդ հայ թարգմանութեան համեմատ՝ գրենք յամբողջութիւն. ոչ յախուռն. վասն զի կրնանք հիմամբ ենթադրել որ մեր Օրինակները կամ անոնց Օրինակը որմէ առնուք յառաջացած են, հոսկէ վերցուցած են առ երեք բառը, իբրեւ կրկնաբանութիւն մը, ըստ որում (ինչպէս տեսանք) քիչ մը վերը "վարեցաւ յաշխարհիս"ը իրենց համար "վերացաւ յաշխարհէս" եղած էր։

69 "Յիշատակ փրկութեան զչարչարանացն" անշուշտ մեծաւ նեղութեամբ կ'ելլէ յն. բնագրին իմաստը՝ որ կ'ըսէ. "Յիշատակ զփրկական չարչարանացն", Գուցէ "յիշ. զփրկութեան", ինչպէս Փ. Բիւզ. Գ. Դպ. Դ. գլ. "կատարեր

*γενόμενος ἐκ γυναικὸς τῆς ἁγίας θεοτόκου καὶ ἀεὶ παρθένου Μαρίας, γενόμενος ὑπὸ νόμον, κατακρῖναι τὴν ἁμαρτίαν ἐν τῇ σαρκὶ αὐτοῦ· ἵνα οἱ ἐν τῷ Ἀδὰμ ἀποθνήσκοντες, ζωοποιηθῶσιν ἐν αὐτῷ τῷ Χριστῷ σου· καὶ ἐμπολιτευσάμενος*[44] *τῷ κόσμῳ τούτῳ, δοὺς προστάγματα σωτηρίας, ἀποστήσας ἡμᾶς τῆς πλάνης τῶν εἰδώλων, προσήγαγεν ἡμᾶς*[45] *τῇ ἐπιγνώσει σοῦ τοῦ ἀληθινοῦ Θεοῦ καὶ πατρός, κτησάμενος ἡμᾶς ἑαυτῷ λαὸν περιούσιον, βασιλικὸν ἱεράτευμα, ἔθνος ἅγιον· καὶ καθαρίσας ἐν ὕδατι, καὶ ἁγιάσας τῷ πνεύματι τῷ ἁγίῳ, ἔδωκεν ἑαυτὸν ἀντάλλαγμα τῷ θανάτῳ ἐν ᾧ κατειχόμεθα πεπραγμένοι ὑπὸ τὴν ἁμαρτίαν*[46] *καὶ κατελθὼν διὰ τοῦ σταυροῦ εἰς τὸν ᾅδην, ἵνα πληρώσῃ ἑαυτοῦ τὰ πάντα,*[47] *ἔλυσε τὰς ὀδύνας τοῦ θανάτου· καὶ ἀναστὰς τῇ τρίτῃ ἡμέρᾳ, καὶ ὁδοποιήσας σαρκὶ*[48] *τὴν ἐκ νεκρῶν ἀνάστασιν, καθότι οὐκ ἦν δυνατὸν κρατεῖσθαι ὑπὸ τῆς φθορᾶς τὸν ἀρχηγὸν*[49] *τῆς ζωῆς. Ἐγένετο ἀπαρχὴ τῶν κεκοιμημένων, πρωτότοκος ἐκ τῶν νεκρῶν· ἵνα ᾖ αὐτὸς τὰ πάντα ἐν πᾶσι πρωτεύων, καὶ ἀνελθὼν εἰς τοὺς οὐρανοὺς ἐκάθισεν ἐν δεξιᾷ τῆς μεγαλωσύνης [σου] ἐν ὑψηλοῖς. Ὃς καὶ ἥξει ἀποδοῦναι ἑκάστῳ κατὰ τὰ ἔργα αὐτοῦ· κατέλιπε δὲ ἡμῖν ὑπομνήματα τοῦ σωτηρίου αὐτοῦ πάθους, ταῦτα, ἃ προτεθείκαμεν*[50] *κατὰ τὰς αὐτοῦ ἐντολάς. Μέλλων γὰρ ἐξιέναι ἐπὶ τὸν ἑκούσιον καὶ ἀοίδιμον καὶ ζωοποιὸν αὐτοῦ θάνατον, τῇ νυκτὶ ᾗ παρεδίδου ἑαυτὸν ὑπὲρ τῆς τοῦ κόσμου ζωῆς, λαβὼν*

---

[44] Barb. *ἐνπολιτευσάμενος*. [45] Միայն Barb. *ἡμᾶς*, նոյնպէս *καθαρίσας ἡμᾶς ἐν ὕδατι*. [46] Barb. *τῆς ἁμαρτίας*. [47] Barb. *ἑαυτῷ τὰ πάντα . . .* [48] Barb. *πάσῃ σαρκί*. [49] Barb. *ἀρχὸν*. [50] Հոս կ'ընդհատի Barb. (պակաս է Danielի Հրատարակութեան 6 էջ, p. 429, l. 1—434, l. 27.

զՏեառն զխաչականն զփրկութեանն զպատարագն գոհութեան, զհաղորդութիւն չարչարանաց յիշատակի,,։

70 "Իջեալ է առաջին,, Հոս կ'աւելցնէ յն. եւ այլ թարգմանութիւնք. "ըստ հրամանաց նորա,, զորն որ հին հայը չունի։ Առ ըստէն կը սկսի Բարբերինեան Օրինակին մեծ ընդհատութիւնը. քանի մը թուղթ ինկած ըլլալով, մինչեւ Յիշատակաց վերջերը։

71 "Կամօք իւրովք,,, որն որ սկզբնական կ'երեւայ Բարսեղեան պատարագին, կը պակսի հիմա յն. եւ այլ թարգմանութեանց. անոր տեղ "գայր ի մահ,,ը յունին մէջ ըլլալով՝ "գայր ի կամաւոր եւ կենդանացուցիչ ի մահն իւր,,. Առ. Մաս. "ի խաչն իւր կամաւոր եւ կեցուցիչ,,. հին լա. "ի կամաւոր յերանելի եւ ի կենդանացուցիչ մահն իւր,,։

72 "Վասն կենաց եւ փրկութեան,,. յն. միայն "վասն կենաց,,. Մաս. Առ. ալ հին Հայոյն պէս "վասն կենաց եւ փրկութեան։,,

73 "Ամենայն արարածոց,,. յն. եւ ուրիշ թարգմանութիւնք "աշխարհի,,. իսկ յաջորդը — "Աշխեաց առ ինքն զաշակերտսն իւր,, — կը մնայ բոլորովին յատուկ հին Հայոյն, եւ անշուշտ սկզբնական է։

47 "Յանարատ. յանապական. յամենազօր,, միայն Հայոյն մէջ կան. եւ շատ կեղակարծ է այս ձայնից սկզբնաբար հոն գտնուիլը. մանաւանդ միջինն՝ որն որ կրնայ Անապականականաց մոլորութեան բացատրութիւն մ'ըլլալ 6ր կամ 7ր դարուն հայ գրչագիրներէն խոթուած։

75 "Ցուցեալ քեզ Հօր եւ Աստուծոյ (յն. "Աստուծոյ եւ Հօր,,)։ Ո՞րչափ գեղեցիկ է յունին հայ թարգմանութեանը երաշխաւորել հարազատպէս ըսելը "ցուցեալ . . .,, (ἀναδείξας դէպ ի վեր), որն որ ուրիշ հին պատարագներուն "զաչսն ի վեր ամբառնալ,,ը կը բովանդակէ։

76 Յն. եւ այլ թարգմանութիւնք հոս "սրբեաց,, մ'աւելի ունին, եւ Հայոյն "ընտրեալ եւ բաշխեալ,,ին տեղ՝ "սրբոց,,։ Այսպէս նաեւ բաժակին օրհնութենէն առաջ՝ Հայոյն "ընտրեալ,,ին տեղ՝ "սրբոց,, ունին անոնք։

Ի. 77 "Եւ բաշխեաց,,, զորն որ յն. եւ ուրիշ թարգմանիչք չունին, ունին Հայը եւ Առ. Մաս.։

78 "Բեկեալ բաշխի,,. յն. եւ ուրիշ թարգմանութիւնք միայն "բեկեալ,, (κλώμενον)։ "Բաշխի,, (dividitur) կը մնայ հին Հայոյն յատուկ՝ միանգամայն ըլլալով Մաս. Առ. ալ (frangitur et dividitur)։

79 "Ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց,, զորն որ յն. եւ ուրիշ թարգմանիչք միայն "ի թողութիւն մեղաց,, ունին, յատուկ է Հայոյն եւ Առաքելոյն Մաս.։ Նոյնն իմանալու է բաժակի ձեւին վերջաւորութեան նկատմամբ։

Ե. — *Ի ձայն.* Առէք կերայք ի սմանէ ամենեքեան, Այս է իմ մարմին՝ որ վասն ձեր եւ բազմաց[77] բեկեալ բաշխի[78] ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։[79] — *Դպիրն.* Ամէն։

*Քահանայն.* Սոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեաց[80] ի ծննդենէ որթոյ առեալ խառնեաց,[81] ուրհնեաց, գոհացաւ,[82] ետ իւրոց ընտրեալ աշակերտացն եւ առաքելոցն ասելով՝ — *Ի ձայն* — Առէք[83] արբէք ի սմանէ ամենեքեան. Այս է արիւն իմ նորոյ ուխտի՝ որ վասն ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։[84]

*Ժողովուրդն.* Ամէն։

Զ. — Իսկ եւս ի սոյն կնքեալ զանփոփոխելի զեւր հրամանն, ասելով՝ Այս է իմ մարմին եւ արիւն,[85] զայս արարէք առ իմոյ յիշատակի, քանիցս անգամ թէ ուտիցէք զհացս զայս եւ զբաժակս ըմպիցէք, զմահ իմ պատմեցէք մինչեւ եկից ես։

Է. — Իսկ արդ մեք, Տէր, ըստ պատուիրանիս այսորիկ,[86] յիշեմք զսուրբ չարչարանս զորա՝ որ վասն մեր ի վերայ խաչին,[87] զերեքաւրեայ զթաղումն, զերանելի զյարութիւնն,[88] զաստուածապէս[89] զհամբարձումն յեր-

---

Ե. ‖105 MV "ի ձայն." L "վերաձայն։" — L չունի՝ որչափ կը տեսնուի ընդօրինակութենէն՝ "ի սմանէ" բառը։ ‖106 L լոկ "որ վասն ձեր եւ բազմաց բաշխի՝" առանց "բեկեալ" բառին։ ‖108 M "Քահանայն ցած" խորագիրն ունի, LV միայն "Քահ.": — LV "Նոյնպէս եւ զբաժակն." M "սոյնպէս . . ." — L "ի ծննդենէ։" ‖109 MLV չունին "խառնեաց." — LV "օրհնեաց, որուն վրայ ձեռագիրը հոս ալ խաչանիշ կը դնէ։ — LV "Ետ իւրոց . . . ։" ‖110 M "Քահանայն ի ձայն." V լոկ "ի ձայն." L չունի խորագիրս, ինչպէս նաեւ "առէք արբէք ի սմանէ" միայն կը կարդայ՝ առանց "ամենեքեան" բառին։ ‖113 MV ունին միայն "Դպիրն. ամէն։"

Զ. ‖114 M կը յաւելու հոս ի սկզբան սա խորագիրը՝ "Քահանայն ցած։" — "Զանփոփոխելի" բառին խմբագրողն սա դիտողութիւնը կցեր է. "Այս հին թարգմանութեան լեզուին բերմանը թերեւս աւելի համեմատ երեւայ զանփոփոխ կարդալ (փխ. զանփոփոխելի.) ինչպէս նաեւ (Թ, տող 162) զանանցանելին կարդալ՝ զանանցականն։" ‖116 M "ըմբիցէք։"

Է. ‖118 Հոս ալ M ի սկզբան կը յաւելու. "Քահանայն ցած" խորագիրը։ ‖119 M "զերեքաւրեա." V "զերեքօրեա թաղումն, զերանելի" (հոս կը սպառի V։) ‖120 M "զերանելի յարութիւնն։" — L "զաստուածապէս համբարձումն"

80 "Յետ ընթրեացն" յատուկ է հին Հայոյն եւ Աս. Մատ. (postquam coenaverunt).

81 "Խառնեաց" կը գտնենք հոս տեղը այնչափ աւելի իրաւամբք, որչափ յանդգնութեամբ անկէ հանուած է։ Յոյն բնագիրը, ինչպէս նաեւ հին լատինն ունի եւ միշտ ունեցած է նոյնը։ 692ին կայսերական պալատան գմբէթին տակ ժողված Հայրք հոս կը գտնեն աս բայը. վասն զի ուրիշ բանի մը վրայ չեն կրնար հիմնել (Տր. կան. 32) բառերին՝ նկատմամբ Յակոբայ եւ Բարսղի պա-

*ἄρτον ἐπὶ τῶν ἁγίων αὐτοῦ καὶ ἀχράντων χειρῶν, ἀναδείξας σοι τῷ Θεῷ καὶ πατρί, εὐχαριστήσας, εὐλογήσας, ἁγιάσας, κλάσας,*

**Ὁ ἱερεὺς κλίνει τὴν κεφαλήν, αἴρων τὴν δεξιὰν αὐτοῦ μετὰ εὐλαβείας, εὐλογεῖ τὸν ἅγιον ἄρτον, ἐκφώνως λέγων·**

*V. Ἔδωκε τοῖς ἁγίοις αὐτοῦ μαθηταῖς καὶ ἀποστόλοις εἰπών· Λάβετε, φάγετε, τοῦτό μου ἐστὶ τὸ σῶμα, τὸ ὑπὲρ ἡμῶν κλώμενον εἰς ἄφεσιν ἁμαρτιῶν.*

**Ὁ χορὸς ψάλλει·** *Ἀμήν.*

**Τότε ὁ ἱερεὺς καὶ ὁ διάκονος τὰ αὐτὰ κἀνταῦθα ὡς ἐν τῇ τοῦ Χρυσοστόμου.**

**Ὁ ἱερεὺς μυστικῶς.**

*Ὁμοίως καὶ τὸ ποτήριον ἐκ τοῦ γεννήματος τῆς ἀμπέλου λαβὼν κεράσας, εὐχαριστήσας, εὐλογήσας, ἁγιάσας·*

**Ἐκφώνως ὁ ἱερεὺς τὴν χεῖρα ἔχων ἄνωθεν, μετὰ εὐλαβείας, καὶ εὐλογῶν, λέγει·**

*Ἔδωκε τοῖς ἁγίοις αὐτοῦ μαθηταῖς καὶ ἀποστόλοις εἰπών· Πίετε ἐξ αὐτοῦ πάντες, τοῦτό ἐστι τὸ αἷμά μου, τὸ τῆς καινῆς διαθήκης, τὸ ὑπὲρ ὑμῶν, καὶ πολλῶν ἐκχυνόμενον εἰς ἄφεσιν ἁμαρτιῶν.*

**Ὁ χορὸς ψάλλει·** *Ἀμήν.*

**Ὁ ἱερεὺς κλίνας τὴν κεφαλήν, ἐπεύχεται μυστικῶς.**

*VI. Τοῦτο ποιεῖτε εἰς τὴν ἐμὴν ἀνάμνησιν. Ὁσάκις γὰρ ἂν ἐσθίητε τὸν ἄρτον τοῦτον, καὶ τὸ ποτήριον τοῦτο πίνητε, τὸν ἐμὸν θάνατον καταγγέλλετε, τὴν ἐμὴν ἀνάστασιν ὁμολογεῖτε.*

*VII. Μεμνημένοι οὖν, δέσποτα, καὶ ἡμεῖς τῶν σωτηρίων σου παθημάτων, τοῦ ζωοποιοῦ σταυροῦ, τῆς τριημέρου ταφῆς, τῆς ἐκ νεκρῶν ἀναστάσεως, τῆς εἰς*

---

տարազներուն, բայց եթէ Քրիստոսի ընթրեաց համար բռուած «խօսքերու»ն վրայ։ Հետեւեալ Բ պատարագին մէջ գանուելն ալ, որն որ նոյն Նախահանգին պատարագն է, մտադրելու բան չէ։ Հրաշք պէտք էր համարել՝ եթէ այնչափ չարչարուած (ինչպէս ցոյց կուր տեսանք) պատարագին մէջ աս մահուամբ չափ Հայոց առնելի եղած ձայնը, որն որ ամբողջ վարդապետութիւն մըն է. այս ինքն Քրիստոսի օրինակը. Մնացած ըլլար այնչափ դարուց ընթացքին մէջ։ Ահա նոյնն ըրած են նաեւ նկատմամբ երկրորդ թարգմանութեան։ Բայց բարեբախտաբար Հայ նախնականը ձեռքերնիս է։ Ահա Լուգդունեան Օրինակը. "Նմանապէս եւ զբաժակն ի բերոյ որթոյ առեալ խառնելով, գոհացաւ, օրհնեաց,, եւն։ Կարդանք նոյն տեղը հետեւեալ երեսը Մանաքեան Օրինակին մէջ. "Ըստ նմին աւրինակի եւ զբաժակ՝ յետ ընթրեացն առ առեալ,,։ (Ամճթ։) Հոս փոխուելով՝ կը փոխուի Բարսղի յոյն բնագիրը. կը փոխուի Քրիստոսի գործքը։

82 Մաշտոցի Ասորին կ'աւելցնէ "բաշխեաց,,։

83 Հին Հայէն եւ Մաշ. Ասորիէն ուրիշ մէկը չունի հոս աս "Առէք,,ը։

84 Տես վերը Ծանօթ. 79։

Զ. 85 Աս պարբերութիւնը "Իւ եւս,,էն մինչեւ "արիւն,, անտարակոյս սկզբնաբար Բարսղի պատարագինն է. թէպէտ հիմայ հին Հայ թարգմանութենէն դուրս տեղ մը չերեւայ։ Յաջորդ Բ պատարագն ալ նոյնն ունի։ Պարբերութեան վերջին ձայրի "մինչեւ եկից ես,,ը Յոյնը վերցնելով կը դնէ՝ "զյարութիւն իմ խոստովանեսջիք,,։ Այսպէս հին լատինն ալ. սակայն ոչ՝ Մաշտոցի Ասորին. որն որ յայսմ ալ Հայուն հետ է "Զայս արարէք,,էն մինչեւ "եկից ես,,։

Է. 86 "Ըստ պատուիրանիս այսորիկ,, կը մնայ հին Հայուն յատուկ։

87 "Զսուրբ չարչարանս զորս որ վասն մեր ի վերայ խաչին,,. յն. եւ հին լտ. "զկենդանացուցիչ չարչարանսն. զկենդանացուցիչ խաչն,,։

88 "Զերանելի զյարութիւնն.,, յն. եւ լտ. "զ'ի մեռելոց յարութիւնն,,։

89 "Զաստուածապէս,,. զորն որ ոչ յն. եւ ոչ այլ թարգմանութիւնք ունին. շատ կասկածելի է. կ'երեւայ Հայոց յետնագոյն գործածութեամբ՝ մէկալ սովորական պատարագէն հոս բերուած։

կենս, ընդ աջմէ Հաւր[90] նստեալն, — ի ձայն — զփառաւորեալ եւ զահաւոր եւ զմիասնական[91] զգալուստ դորա:

[Զքոյս ի քոյոցս քեզ մատուցանեմք:[92]]

Ժողովուրդն. Յամենայնի աւրհնեալ ես, Տէր:[93]

Աւրհնեմք զքեզ, գովեմք զքեզ, գոհանամք զքէն, աղաչեմք զքեզ, Տէր[94] Աստուած մեր:

Ը. — Քահանայն. Վասն այսորիկ, Տէր,[95] եւ մեք տառապեալքս,[96] զորս արժանի արարեր պաշտաման սրբութեան քո,[97] ոչ վասն արդարութեանց մերոց,[98] զի ոչ ինչ բարի արարաք[99] ի վերայ երկրի, այլ վասն ողորմութեան եւ գթութեան քո՝ զոր սփռեցեր ի մեզ,[100] համարձակիմք մերձենալ[101] յանարատ եւ ի սուրբ սեղանս քո, եւ դնել աւրինակ մարմնոյ[102] եւ արեան[103] Քրիստոսի քո:

Քահանայն. Խաղաղութիւն ամենեցուն:

Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք. (կարդա Աստուծոյ երկիր պագցուք:)

Ժողովուրդն. Առաջի քո, Տէր:

‖121 L «ընդ աջմէ Հօր նստեալն:» Աս խօսքէ ետքը M առանց «ի ձայն» խորագրի կը կցէ. «զփառաւորեալ...»: ‖123 Փակագծեալն («Զքոյս...») չկայ ձեռագրաց մէջ: ‖124 Միայն M ունի այս մասն ամբողջ՝ «Դպիրքն. Յամենայնի աւրհնեալ ես» եւն: L այսպէս կը նշանակէ համառօտիւ՝ «Դպ. եղան. (— եղանակեն) Յամենայնի օրհնեալ ես Տէր:»

Ը. ‖127 Միայն M ունի «Քահանայն,» նոյնպէս նաեւ «Տէր» բառը («Վասն այսորիկ, Տէր, եւ մեք...») զոր չունի L: ‖128 Հոս («ոչ վասն...») կը սկսի դարձեալ F (Բուզանդ, Ե, իը, էջ 224, տող 13) «Զի ոչ եթէ վասն արդարութեանց ինչ մերոց (այսպէս լաւ եւս, ML «վասն արդարութեան մերոյ»), զի ոչինչ արարաք գործս ի վերայ երկրի, այլ....» ‖129 Բուզանդ «այլ վասն ողորմութեան եւ գթութեան քո՝ զոր սփռեցեր ի մեզ՝ համարձակիմք խնդրել ի սրտագիտէդ, որ քննես զսիրտս եւ զերիկամունս որդւոց մարդկան:» — Յայտնի է որ վերջին խօսքն այլազգ է Բուզանդայ քով, որ այսուհետեւ կը փոխէ աղօթքն յարմարցընելով իւր պատմած դէպքին, եւ կը գրէ այսպէս. «Դու, Տէր, սրտագէտ յամենայնի, դու գիտես զճշմարտութեան զվաստակոց զառնս զայսորիկ, զի խստամբերութեամբ վարի ի վարս վաստակոց իւրոց եւ չիք հաւատք ի սմա. արդ յաւել ի սա հաւատս քան զհատ մանանխոյ, զի մի կորիցէ անձն սորա: Հովիւ քաջ, որ ելեր ի խնդիր ոչխարին կորուսելոյ, եւ եդիր զանձն քո ի վերայ խաշանց քոց, արդ եւ զսա փրկեա ի թերահաւատութենէս՝ յոր ըմբռնեալս է, զի մի յափշտակեսցէ թշնամին զանձն սորա, եւ քո ստեղծուածս եւ նմանութիւն կերպարանացս յապականութիւն յաւիտենական կորստեան մատնեսցի:» Հոս կը սպառի Բուզանդայ աղօթքն: Մնացեալ մասին համար կը մնան միայն ML ձեռագիրք: ‖131 L «օրինակ:» ‖133 Այս տողը միայն M ունի, եւ այն՝ այսպէս. «Քահ. Խաղաղ:» ‖136 Միայն M ունի՝ «Ժող.. Առաջի քո

90 «Հօր», յն. եւ հին լտ. «Աստուծոյ եւ Հօրդ»:

91 «Եւ զմիասնական» չունի յն. եւ ոչ այլ թարգմանութիւնք:

92 «Զքոյս ի քոյոցս քեզ մատուցանեմք», որն որ Բիւզանդեան պատարագին յատուկ կ'երեւայ. ինչպէս յաջորդ չորս պատարագաց մէջ՝ նոյնպէս հոս հին հայերէն Բարսեղեանին մէջ

*οὐρανοὺς ἀνόδου, τῆς ἐκ δεξιῶν σοῦ τοῦ Θεοῦ καὶ πατρὸς καθέδρας, καὶ τῆς ἐνδόξου καὶ φοβερᾶς αὐτοῦ παρουσίας.*

**Ἐκφώνως ὁ ἱερεύς·**

*Τὰ σὰ ἐκ τῶν σῶν σοι προςφέροντες κατὰ πάντα καὶ διὰ πάντα.*

**Ὁ χορὸς ψάλλει τὸ**

*Σὲ ὑμνοῦμεν, σὲ εὐλογοῦμεν, σοὶ εὐχαριστοῦμεν, Κύριε· καὶ δεόμεθα, ὁ Θεὸς ἡμῶν.*

**Ὁ ἱερεὺς κλίνας τὴν κεφαλὴν εὔχεται μυστικῶς.**

*VIII. Διὰ ταῦτα δέσποτα πανάγιε, καὶ ἡμεῖς οἱ ἁμαρτωλοὶ καὶ ἀνάξιοι δοῦλοί σου, οἱ καταξιωθέντες λειτουργεῖν τῷ ἁγίῳ σου θυσιαστηρίῳ, οὐ διὰ τὰς δικαιοσύνας ἡμῶν, οὐ γὰρ ἐποιήσαμέν τι ἀγαθὸν ἐπὶ τῆς γῆς, ἀλλὰ διὰ τὰ ἐλέη σου, καὶ τοὺς οἰκτιρμούς σου, οὓς ἐξέχεας πλουσίους ἐφ' ἡμᾶς, προσεγγίζομεν τῷ ἁγίῳ σου θυσιαστηρίῳ· καὶ προσθέντες τὰ ἀντίτυπα τοῦ ἁγίου σώματος καὶ αἵματος τοῦ Χριστοῦ σου, δεόμεθα, καὶ σὲ παρακαλοῦμεν, ἅγιε ἁγίων εὐδοκίᾳ τῆς σῆς ἀγαθότητος, ἐλθεῖν τὸ πνεῦμά σου τὸ ἅγιον ἐφ' ἡμᾶς, καὶ ἐπὶ τὰ προκείμενα δῶρα ταῦτα, καὶ εὐλογῆσαι αὐτὰ καὶ ἁγιάσαι καὶ ἀναδεῖξαι.*

**Ὁ διάκονος ἀποτίθησι τὸ ῥιπίδιον ὅπερ ἐκράτει, ἢ κάλυμμα, καὶ εὔχεται ἐγγύτερον τῷ ἱερεῖ, καὶ προσκυνοῦσιν ἀμφότεροι τρίς, ἔμπροσθεν τῆς ἁγίας τραπέζης καὶ εὐχόμενοι καθ' ἑαυτοὺς τὸ** *ὁ Θεὸς ἱλάσθητί μοι τῷ ἁμαρτωλῷ,* **λέγουσι μυστικῶς τρίς.**

*Κύριε ὁ τὸ πανάγιόν σου πνεῦμα ἐν τῇ τρίτῃ ὥρᾳ τοῖς ἀποστόλοις σου καταπέμψας, τοῦτο ἀγαθὲ μὴ ἀντανέλῃς ἀφ' ἡμῶν.* **Καὶ τό,** *Καρδίαν καθαρὰν κτίσον ἐν ἐμοὶ ὁ Θεός. Καὶ πνεῦμα εὐθὲς ἐγκαίνισον ἐν τοῖς ἐγκάτοις μου.*

**Εἶτα τὴν κεφαλὴν ὑποκλίνας ὁ διάκονος, δείκνυσι τῷ ὠραρίῳ τὸν ἅγιον ἄρτον. Καὶ λέγει μυστικῶς.** *Εὐλόγησον δέσποτα τὸν ἅγιον ἄρτον.*

---

կայ. Հիմակուան յն. հին լտ. թարգմանութիւնը եւ նորագոյն հայ թարգմանութիւնն ունին։ Բառգիրքինեան յն. Օրինակը, ուաղ, կը լաէ։

93 "Յաւիտեանս օրհնեալ ես. Տէր,, կը մնայ միայն հայ թարգմանութեան։

94 Յոյնն ու "Տէր,,ը քէշ մ'առաջ "զքեզ,,էն ետքը կը կարդայ։

Ը. 95 "Տէր.,, կը յաւելու յոյնը "ամենասուրբ,,։

96 "Եւ մեք տառապեալքս,, յն. "եւ մեք մեղաւորքս եւ անարժան ծառայք քո։"

97 "Պաշտաման սրբութեան քո,,. յն. "պաշտաման սեղանոյ սրբութեան,,։

98 Մեր Օրինակները՝ "արդարութեան մերոյ,,. գրեն ըստ Փաւստ. Օրինակին՝ որուն կը միաբանին յոյնն ալ, հին լտ. ալ։ Մատ. Ա. եղակի ունի մեր հասարակ Օրինակներուն պէս։

99 "Ոչ ինչ բարի արարաք,,. Փաւստ. ամբողջ այսպէս ունի "Զի ոչ ինչ արարաք բարիս,,։

100 Ամբողջ աս խօսքը "այլ վասն ողորմութեան եւ գթութեան քո՝ զոր սփռեցեր ի մեզ համարձակիմք,, բառ առ բառ ունի Փաւստոս. թէպէտ յն. "առատապէս,,(πλουσίους) կ'աւելցնէ "սփռեցեր,,էն ետքը, եւ "համարձակիմք,,ը չունի։ Ուստի չի կրնար յայս մասին հին Հայոյն հարազատութիւնը տարակուսի տակ իյնալ։

101 "Համարձակիմք մերձենալ յանարատ եւ ի սուրբ,,, յն. "մերձենամք ի սուրբ,,։

102 "Մարմնոյ,,, յն. "սուրբ մարմնոյ,,։

103 "Օրինակ մարմնոյ եւ արեան,, այսինքն ամենասուրբ խորհրդոյ։ Որչափ յարմար գտած է մեր յանուն Սահակայ — անկէ 100 տարի մը ետքը — Կանոններ կարկատողը՝ աս պատարագէն "Օրինակը„ Խորհրդոյ նշանակութեամբ գործածելը, գիտնալով որ Սահակ աս պատարագը ան ատեն կը գործածէր։

104 Բաղմաք տարբերած է աս աղօթքը հիմակուան յունարէնին մէջ, որուն ամբողջն աս է (միջանկեալները հանելով). "Աղաչեմք եւ խնդրեմք. սուրբդ սրբոց. հաճութեամբ քո

### ԿՈՉՈՒՄՆ

*Քահանայն.* Աղաչեմք[104] զքեզ, Տէր, եւ խնդրեմք ի բարերարութենէդ քումմէ, առաքեա զհոգին քո սուրբ ի մեզ եւ ի պատարագս յայս, որ եդեալ է առաջի աստուածութեանդ քո,[105] որպէս զի արասցէ զհացս զայս նոյն ինքն պատուական մարմին Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, եւ զբաժակս նոյն ինքն պատուական արիւն Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի. եւ բնաւ զմեզ զամենեսեան՝ որք ի միոջէ մարմնոյ եւ միոջէ արենէ[106] ճաշակեմք, միաբանս առնել ի հաւասարութիւն

---

տէր։„ ‖[138] ML "քումմէ։„ — Ձեռագրաց մէջ "ի մեզ„ բառին վրայ † խաչանիշ խորագիր-նշանը կայ, նոյնպէս նաեւ յաջորդացս սա բառերուն վրայ՝ "ի պատարագս † յայս.„ . . . զհացս † զայս . . . Եւ զբաժակս † զայս . . . ։„ ‖[140] ML չունին "մերոյ„՝ "Տեառն„ բառէն ետքը։ Հա L օրինակին մէջ (էջ 33) ուրիշ գրիչ մը բնագրին մէջ կարմրագիր սանկ նշան մը † դնելէն ետքը ստորին լուսանցքին մէջ կ'աւելցնէ Ծանօթութիւն մը նոյն նշանով թէ "Քա-

բարերարութեանդ գալ Հոգւոյդ սրբոյ ի մեզ եւ յընծայս յայսոսիկ որ եդեալ են առաջի. եւ օրհնել զսոսա եւ սրբել եւ ցուցանել (մեր երկրորդ թարգմանութիւնը "վերացուցանել„ = ἀναδεῖξαι) զհացս զայս առնելով (ποίησον) նոյն ինքն պատուական մարմին Տեառն Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ զբաժակս զայս նոյն ինքն պատուական արիւն Տեառն եւ Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի որ հեղաւ վասն կենաց աշխարհի„։

Առանց հասարակ Յոյնը։ Բարսեղ. ինչպէս ըսինք, դեռ կը լռէ։ Հին լատինն ամենայնիւ վերինին համաձայն ըլլալով՝ մէկ նշանաւոր կէտի վրայ կը տարբերի. երբ որ կ'ըսէ։ Te obsecramus ... venire S. Spiritum super ... munera ista, et benedicere ea et sanctificare (modo erigit se Pontifex et signat) et ostendere panem quidem istum, ipsum honorificum Corpus Domini Dei et Salvatoris etc. ուր բոլոր մասը զօրութիւնը ցուցանել ձայնին վրայ դրուած է. առնել բայը չկայ մէջտեղ։

Մտադրութեան արժանի կը թուի՝ որ սա լատին թարգմանութիւնը՝ որն որ (ինչպէս ցայս վայր տեսանք) այնչափ ճիշդ բառական է, առ ποίησονը = efficiens չունի։ Նոյն զօրութիւնը հին հայ թարգմանութեան "արասցէ„ն ալ չի կարար։ Որովհետեւ եթէ աղէկ մը գննենք, հին հային ալ նոյնպէս չունի. վասն զի ան "արասցէ„ն չէ թէ ποίησῃ = efficiat է. հապա ἀναδείξῃ-ի թարգմանութիւնն է. ինչպէս քիչ մ'ետքը մի եւ նոյն գրչով նոյն բայը նոյնպէս թարգմանած է. (տես Յիշեա-ներուն վերջը։) Նոյնը կը հաստատէ յաջորդ Բ պատարագը. ինչպէս պիտ'որ տեսնենք։ Ուստի հիմնական Յունին մէջ նախնական ἀναδείξειν չհանելով եկամուտ սպրդած է ποιεῖν ալ։

105 "Աստուածութեանդ քո„. ուրիշ տեղէն գիտենք որ ասիկայ սկզբնական չէ յն. բնագրին եւ ոչ թարգմանութեան բնագրին, բայց ընթերցուածոյ բաւական հին տարբերութիւն մ'ըլլալու է։

106 Հին հայ թարգմանութեան սեպհականութեանց մէկը համարելու ենք հոս ըսելը "ի միոջէ մարմնոյ եւ ի միոջէ արենէ„. փոխանակ ըսելու ըստ յունին եւ այլոց ամենայն թարգմանութեանց "ի միոջէ հացէ եւ ի միոջէ բաժակէ„ որն որ հարկաւ սկզբնական է բարողը. եւ հետեւեալ ըսելիքին, հաւատացելոց միաբանութեան, նշանակները (symbole) կը ցուցընէ։ Թէպէտ նոյն նշանակութիւնը խորագոյն կերպով նաեւ հոն ներկայ եղող Քրիստոսի մէկ մարմնէն եւ մէկ արիւնէն ալ յառաջ կրնայ բերել հին հայերէն բնագիրը։ "ի միոջէ արենէ„ արդէն գրական (biblique) է՝ Գործ. ԺԷ. 26. Յաճախապ. էջ 212 առ. Վենետ. 1838՝ "Զի ամենեքին ի մի յոյս կոչեցան ի Քրիստոս. զի մի մարմին պատուական ի սուրբ մարմնոյ նորա եւ յարենէ պատարագեցան ի փառաւորութիւն„։

107 "Հոգւոյն սրբոյ„. յն. "մի Հոգւոյն սրբոյ„, որն որ շատ հաւանական է թէ սկզբնական ըլլայ. "մի հոգի„ է գրական (biblique)։ Նոյնպէս հին լտ. ալ. բայց ոչ Աս. Մառ. որն որ հին հայուն համաձայն է։

**Καὶ ὁ ἱερεὺς ἀνιστάμενος σφραγίζει τρὶς τὰ ἅγια δῶρα, λέγων μυστικῶς·**

Τὸν μὲν ἄρτον τοῦτον, ποίησον αὐτὸ τὸ τίμιον σῶμα τοῦ Κυρίου, καὶ Θεοῦ, καὶ σωτῆρος ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ. — **Ὁ διάκονος.** Ἀμήν. — **Καὶ αὖθις ὁ διάκονος.** — Εὐλόγησον δέσποτα τὸ ἅγιον ποτήριον. —

**Ὁ δὲ ἱερεὺς εὐλογῶν λέγει·** Τὸ δὲ ποτήριον τοῦτο, αὐτὸ τὸ τίμιον αἷμα τοῦ Κυρίου, καὶ Θεοῦ, καὶ σωτῆρος ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ. — **Ὁ διάκονος.** Ἀμήν. —

**Ὁ ἱερεύς.** Τὸ ἐκχυθὲν ὑπὲρ τῆς τοῦ κόσμου ζωῆς. — **Ὁ διάκονος.** Ἀμήν. — **Καὶ αὖθις ὁ διάκονος δεικνύων μετὰ ὠραρίου τὰ ἅγια ἄμφω λέγει·**

Εὐλόγησον δέσποτα. — **Ὁ δὲ ἱερεὺς εὐλογῶν μετὰ τῆς χειρὸς ἀμφότερα τὰ ἅγια, λέγει·**

Μεταβαλὼν τῷ πνεύματί σου τῷ ἁγίῳ. — **Ὁ διάκονος.** Ἀμήν. **Τρίς.** —

**Καὶ τὴν κεφαλὴν ὁ διάκονος ὑποκλίνας τῷ ἱερεῖ, καὶ εἰπὼν τὸ** Μνήσθητί μου ἅγιε δέσποτα τοῦ ἁμαρτωλοῦ, **μεθίσταται ἐν ᾧ πρότερον ἵστατο τόπῳ, λαβὼν καὶ τὸ ῥιπίδιον αὖθις ὡς πρότερον.**

**Ὁ ἱερεὺς ἐπεύχεται.**

Ἡμᾶς δὲ πάντας, τοὺς ἐκ τοῦ ἑνὸς ἄρτου καὶ τοῦ ποτηρίου μετέχοντας, ἑνώσαις ἀλλήλοις εἰς ἑνὸς πνεύματος ἁγίου κοινωνίαν, καὶ μηδένα ἡμῶν εἰς κρίμα, ἢ εἰς κατάκριμα, ποιήσαις μετάσχειν τοῦ ἁγίου σώματος καὶ αἵματος τοῦ Χριστοῦ σου· ἀλλ᾽ ἵνα εὕρωμεν ἔλεον καὶ χάριν μετὰ πάντων τῶν ἁγίων, τῶν ἀπ᾽ αἰῶνός σοι εὐαρεστησάντων προπατόρων, πατριαρχῶν, προφητῶν, ἀποστόλων, κηρύκων, εὐαγγελιστῶν, μαρτύρων, ὁμολογητῶν, διδασκάλων, καὶ παντὸς πνεύματος δικαίου, ἐν πίστει τετελειωμένου.

**Ἐκφώνως.**

Ἐξαιρέτως τῆς παναγίας ἀχράντου, ὑπερευλογημένης, ἐνδόξου δεσποίνης ἡμῶν θεοτόκου, καὶ ἀειπαρθένου Μαρίας.

**Ὁ χορὸς ψάλλει·** Ἐπὶ σοὶ χαίρει. **Εἰ δέ ἐστιν ἡ μεγάλη πέμπτη, ψάλλει·**

Τοῦ δείπνου σου τοῦ μυστικοῦ σήμερον υἱὲ Θεοῦ κοινωνόν με παράλαβε, οὐ μὴ γὰρ τοῖς ἐχθροῖς σου τὸ μυστήριον εἴπω. Οὐ φίλημά σοι δώσω καθάπερ ὁ Ἰούδας, ἀλλ᾽ ὡς ὁ λῃστὴς ὁμολογῶ σοι, μνήσθητί μου Κύριε ἐν τῇ βασιλείᾳ σου.

**Εἰ δέ ἐστι τὸ μέγα σάββατον, ψάλλει·**

Σιγησάτω πᾶσα σὰρξ βροτεία, καὶ στήτω μετὰ φόβου καὶ τρόμου, καὶ μηδὲν γήϊνον ἐν ἑαυτῇ λογιζέσθω· Ὁ γὰρ βασιλεὺς τῶν βασιλευόντων καὶ κύριος τῶν κυριούντων προέρχεται σφαγιασθῆναι, καὶ δοθῆναι εἰς βρῶσιν τοῖς πιστοῖς. Προηγοῦνται δὲ τούτου οἱ χοροὶ τῶν ἀρχαγγέλων μετὰ πάσης ἀρχῆς καὶ ἐξουσίας, τὰ πολυόμματα Χερουβίμ, καὶ ἑξαπτέρυγα Σεραφίμ, τὰς ὄψεις καλύπτοντα καὶ βοῶντα τὸν ὕμνον, ἀλληλούϊα.

ճշմարիտ քարոզութեան։ — Ի ձայն — Եւ ես զհայրապետն մեր զԱյս անուն, շնորհեա զնա ընդ երկայն աւուրս։ Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա՝ որք մատուցին զպատարագս զայս եւ վասն որոց մատուցինն. եւ տուր նոցա հատուցումն բարի ի քոց բարութեանցդ, եւ փոխանակ ապականութեանս՝ զանապական տեղի հանգստեան, փոխանակ երկրաւորիս՝ զերկնաւորսդ, փոխանակ անցաւորիս՝ զանանցանելիսդ։ Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա ըստ մեծի ողորմութեան քո եւ զիս զանարժանս, եւ թող ինձ զմեղս իմ զկամայն եւ զակամայն, եւ մի վասն մեղաց իմոց արգելուր զշնորհս Հոգւոյդ սրբոյ յառաջիկայ յընծայէս յայսմանէ։ Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա ըստ մեծի ողորմութեան քո եւ զհոգի հանգուցելոյն՝ յորոյ անուն յիշելով պատարագս մատեաւ Աստուծոյ, եւ հանգո ընդ սուրբս քո։ Յիշեա, Տէր, որք յանապատսն են եւ ի լերինս, յայրս եւ ի փապարս երկրի։

---

մեայ։ ‖[159] «Ի ձայն» չկայ այս տեղ M ձեռագրին մէջ. պատշաճ էր հոս L ի ընթերցումն ընդունիլ, որ հայրապետի յիշատակն սապէս ունի՝ «Ի ձայն. Եւ ես զհայրապետն մեր շնորհեա մեզ ընդ երկայն աւուրս։» ‖[162] M է այսպէս՝ «եւ փոխանակ ապականութեանս՝ զանապականելիսդ, փոխանակ երկրաւորիս՝ զերկնայինսդ, փոխանակ անցաւորիս՝ զանանցանելիսդ։» (Աւոր կցուած նաեւ սա տողերն) «Յիշեա Տէր եւ ողորմեա եւ աւրհնեա զմատուցողս ընծայիս եւ վասն որոց մատուցինն, եւ փոխատրեա նոցա ընդ անցաւորիս զանապական տեղի հանգստեան եւ ընդ երկնաւորիս զերկնաւորսդ։» Այս կրկնութեան պատճառն այն է որ Բարսղի նոր թարգմանութենէն խառնուած են տողերս։ ‖[165] M կը յաւելու «(զիս զանարժանս) եւ զմեղաւորս», որ յաւասմունս է։ ‖[167] Յետին յաւելուած մ'ունի M «յընծայէս յայսմանէ» բառերէն ետքը՝ գրելով. «եւ վասն սուրբ եւ անմահ պատարագիս զոր հաւատով մատուցանեմ առաջի աստուածութեանդ քո, առատաձեռնեայ յիս զբարերար մարդասիրութիւնդ քո բազմագութ եւ ողորմած Աստուած աղաչեմ։» — Հոս կը դառնայ L հնոյն եւ կ'ընթեռնու «Յիշեա Տէր եւ ողորմեա եւ օրհնեա ըստ մեծի ողորմութեան եւ զհոգի հանգուցելոյն՝ յորոյ անուն (L չունի հոս «յիշելով») պատարագս մատեաւ (— L չունի հոս «Աստուծոյ») եւ հանգոյ ընդ սուրբս քո.» — Հոս L եւ M նոր յաւելուած մ'ունին կցելով՝ «յարքայութեան քում, բարեխօսութեամբ (M բարեխաւսութեամբ) սուրբ եւ անմահ պատարագիս աղաչեմ։»

‖[170] Անկէ սկսեալ նօտրագիր տպուածն ձեռագրաց մէջ սա վերնագիրը կը կրէ. M «Յիշատակ զոր ասացեալ է աստուածապատիւ հոգէկիր եւ սրբազան տեառն Վրթանէս եպիսկոպոսին.» L «Աղօթք զոր ասացեալ է Մեսրոպա վարդապետի։» Արդ այս մասն ձեռագրաց մէջ բոլորովին կրճատուած ու աղաւաղուած կը ներկայանայ, ուստի Յարգ. հեղինակն փորձած է հետեւելով յունականին վերականգնել հին հայկականն՝ պահելով ինչ որ հայ ձեռագիրքն ուղիղ պահած են, եւ մնացեալն — նօտրէ տպուածները — նոր յաւելլով յունարէնէն։ Ձեռագիրք (ML) այսպէս ունին ամբողջ կտորս. «Ողորմեա Տէր ի վերայ թագաւորաց, եւ իշխանաց զի խաղաղութեամբ վարեսցեն զկեանս իւրեանց։ Ողորմեա Տէր ի վերայ փրկեալ եկեղեցւոյ քո եւ տուր սմա զանշարժ զխաղաղութիւնդ քո, զի անբծութեամբ (M ամբծութեամբ եւ միամտութեամբ) վարեսցուք զկեանս մեր եւ արժանի լիցուք պարգեւացդ խոստացելոց։ Ողորմեա Տէր ի վերայ ժողովրդեանս, որ կան առաջի քո եւ սպասեն գթութեանդ քո։ Աղաչեմք վասն աւդոց յերկնից (L օդոց երկնից) եւ պտղոց երկրիս, շնորհեա զաւդս (L զօդս) բարեխառն եւ առողջ (L առողջս), տուր եւ զերկիրս պտղաբեր (L պտղաբերս) ի մուննդս ծառայից քոց, որոց եւ տուր իսկ մեզ ի ծա-

*ἀντὶ τῶν ἐπιγείων, τὰ ἐπουράνια· ἀντὶ τῶν προσκαίρων, τὰ αἰώνια· ἀντὶ τῶν φθαρτῶν, τὰ ἄφθαρτα. Μνήσθητι, Κύριε, τῶν ἐν ἐρημίαις, καὶ ὄρεσι, σπηλαίοις, καὶ ταῖς ὀπαῖς τῆς γῆς. Μνήσθητι, Κύριε, τῶν ἐν παρθενίᾳ, καὶ εὐλαβείᾳ, καὶ ἀσκήσει, καὶ σεμνῇ πολιτείᾳ διαγόντων. Μνήσθητι, Κύριε, τῶν εὐσεβεστάτων καὶ πιστοτάτων ἡμῶν βασιλέων, οὓς ἐδικαίωσας βασιλεύειν ἐπὶ τῆς γῆς· ὅπλῳ ἀληθείας, ὅπλῳ εὐδοκίας στεφάνωσον αὐτούς, ἐπισκίασον ἐπὶ τὴν κεφαλὴν αὐτῶν ἐν ἡμέρᾳ πολέμου· ἐνίσχυσον αὐτῶν τὸν βραχίονα, ὕψωσον αὐτῶν τὴν δεξιάν, κράτυνον αὐτῶν τὴν βασιλείαν, ὑπόταξον αὐτοῖς πάντα τὰ βάρβαρα ἔθνη, τὰ τοὺς πολέμους θέλοντα. Χάρισαι αὐτοῖς βαθεῖαν καὶ ἀναφαίρετον εἰρήνην, λάλησον εἰς τὴν καρδίαν αὐτῶν ἀγαθὰ ὑπὲρ τῆς ἐκκλησίας σου, καὶ παντὸς τοῦ λαοῦ σου· ἵνα ἐν τῇ γαλήνῃ αὐτῶν ἤρεμον καὶ ἡσύχιον βίον διάγωμεν, ἐν πάσῃ εὐδοκίᾳ καὶ σεμνότητι. Μνήσθητι, Κύριε, πάσης ἀρχῆς καὶ ἐξουσίας, καὶ τῶν ἐν παλατίῳ ἀδελφῶν ἡμῶν, καὶ παντὸς τοῦ στρατοπέδου. Τοὺς ἀγαθοὺς ἐν τῇ ἀγαθότητί σου διατήρησον· τοὺς πονηροὺς ἀγαθοὺς ποίησον ἐν τῇ χρηστότητί σου. Μνήσθητι, Κύριε, τοῦ περιεστῶτος λαοῦ, καὶ τῶν δι' εὐλόγους αἰτίας ἀπολειφθέντων, καὶ ἐλέησον αὐτοὺς καὶ ἡμᾶς κατὰ τὸ πλῆθος τοῦ ἐλέους σου. Τὰ ταμεῖα αὐτῶν ἔμπλησον παντὸς ἀγαθοῦ, τὰς συζυγίας αὐτῶν ἐν εἰρήνῃ καὶ ὁμονοίᾳ διατήρησον, τὰ νήπια ἔκθρεψον, τὴν νεότητα παιδαγώγησον, τὸ γῆρας περικράτησον, τοὺς ὀλιγοψύχους παραμύθησον, τοὺς ἐσκορπισμένους ἐπισυνάγαγε, τοὺς πεπλανημένους ἐπανάγαγε, καὶ σύναψον τῇ ἁγίᾳ σου καθολικῇ καὶ ἀποστολικῇ ἐκκλησίᾳ. Τοὺς ὀχλουμένους ὑπὸ πνευμάτων ἀκαθάρτων ἐλευθέρωσον, τοῖς πλέουσιν σύμπλευσον, τοῖς ὁδοιποροῦσι συνόδευσον, χηρῶν πρόστηθι, ὀρφανῶν ὑπεράσπισον, αἰχμαλώτους ῥῦσαι, νοσοῦντας ἴασαι. Τῶν ἐν βήματι, καὶ ἐξορίαις, καὶ πάσῃ θλίψει καὶ ἀνάγκῃ, καὶ περιστάσει ὄντων, μνημόνευσον ὁ Θεός, καὶ πάντων τῶν δεομένων τῆς μεγάλης σου εὐσπλαγχνίας, καὶ τῶν ἀγαπώντων ἡμᾶς, καὶ τῶν μισούντων, καὶ τῶν ἐντειλαμένων ἡμῖν τοῖς ἀναξίοις εὔχεσθαι ὑπὲρ αὐτῶν. Καὶ παντὸς τοῦ λαοῦ σου, μνήσθητι, Κύριε, ὁ Θεὸς ἡμῶν.*

---

*ւայութիւն։ Ողորմեա Տէր ըստ մեծի ողորմութեան քում ի վերայ հաւատացելոց քոց։ Զամուսնութիւնս սոցա պահեա անարատ (L անարատս), զտղայս սոցա սնո (L սնոյ) յարդարութեան, զերիտասարդս սոցա պահեա, զծերս սոցա հաստատեա յիմաստութեան (M յիմաստութիւն ճշմարտութեան), զկարճամիտս մխիթարեա, զցրուեալսն ժողովեա, զմոլորեալսն դարձո (M դարձոյ) ի գիտութիւն ճշմարտութեան եւ զամենայն նեղեալս յիւրաքանչիւր վտանգից (L վտանկից) փրկեա. զի դու ես Աստուած բարերար, տեսուչ ես ամենայն նեղելոց, վերակացու ես որբոց եւ այրեաց, դարձուցիչ ես գերութեանց, բժիշկ հիւանդաց, աւգնական անաւգնականից (L օգնական անօգնականից), յոյս յուսացելոց, խռովելոց հանգիստ, աշխատելոց նաւահանգիստ (վերջինս չունի L), տեսուչ ես ամենայնի, որ գիտես զպէտս եւ զկարիս իւրաքանչիւրոց։ Նայեա առ մեզ, Տէր (L չունի “Տէր„), քաղցրութեամբդ (L քաղցրութեամբ) քո, երեւեցո (M երեւեցոյ) զերեսս քո ի մեզ գթութեամբդ քո, լռեցո (M լռեցոյ) զհերձուած (L զհերձուածն) յեկեղեցւոյ քումէ (M քումմէ), շիջո զխռովութիւն հեթանոսաց որք կամին զպատերազմ (L զպատերազմս), խափանեա զհայհոյութիւն հերետիկոսաց (L հերետոսաց)։ Ընկալ զմեզ յարքայութեանդ քո, արա զմեզ որդիս լուսոյ եւ որդիս տուընջեան, եւ տուր մեզ սիրտ միաբանութեան իբրեւ ի միջէ բերանոյ փառաւոր առնել զմեծվայելչութիւն (L զմեծավայելչութիւն) սրբութեանդ քո. — Է յայն (M “ի ձ.„) — վասն զի քեզ վայելէ եւ Միածնի (M Միածնին) Որդւոյդ (M Որդւոյ) քո հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւոյդ փառք, իշխանութիւն եւ պատիւ*

Յիշեա, Տէր, որք կուսութեամբ եւ երկիւղածութեամբ եւ ճգնութեամբ եւ պարկեշտութեամբ վարեն կեանս: Յիշեա, Տէր, զթագաւորս մեր . . . . տուր նոցա զանշարժ զխաղաղութիւն. խօսեաց ի սիրտ նոցա բարութիւնս վասն եկեղեցւոյ քոյ եւ ամենայն ժողովրդեանս, զի նոցա խաղաղութեամբ . . . . անբծութեամբ եւ միամտութեամբ վարեսցուք զկեանս մեր: Յիշեա, Տէր, զամենայն պետութիւն եւ զիշխանութիւն եւ որք ի պաղատանս են եղբարքն մեր եւ զամենայն զօրսն: Զբարիսն բարերարութեամբ քո պահեա. զչարսն՝ բարիս քաղցրութեամբ քո: Յիշեա, Տէր, զժողովուրդս որ կան առաջի քո, եւ որք վասն արդար պատճառանաց հեռի գտան, եւ ողորմեա նոցա եւ մեզ ըստ մեծի ողորմութեանդ: Զշտեմարանս նոցա լի արա ամենայն բարութեամբ: Զամուսնութիւնս նոցա պահեա խաղաղութեամբ եւ միամտութեամբ, զտղայսն սնո, զերիտասարդս խրատեա, զծերսն հաստատեա, զկարճամիտսն մխիթարեա, զցրուեալսն ժողովեա, զմոլորեալսն դարձո, եւ խառնեա ի սուրբ կաթողիկէ եւ յառաքելական եկեղեցի քո. որք նեղեալ են յայսոց պղծոց՝ ազատեա, որք նաւեն՝ ընդ նոսին նաւարկեա, որոց գնանն ճանապարհ՝ լեր ճանապարհորդակից, տեսուչ լեր այրեաց, վերակացու որբոց, դարձուցիչ՝ գերութեանց, բժշկեա զախտացեալս: Որք յատեանս եւ յաքսորս եւ յամենայն նեղութեան եւ ի վտանգի եւ ի տարակուսի: Յիշեա, Տէր Աստուած մեր, եւ զամենեսին՝ որ աղաչեն եւ խնդրեն զմեծ քո գթութիւնդ, եւ որք սիրենն զմեզ եւ որք ատեն եւ որք պատուիրեցին մեզ անարժանեացս աղօթել ի վերայ նոցա աղօթս: Եւ զմեր ժողովուրդ քո յիշեա, Տէր Աստուած մեր, եւ հեղ ի նոսա զքո առատ ողորմութիւնդ, ամենեցուն բոլորեցունց զխնդրուածս նոցա որ ի փրկութիւն են, եւ զոր մեք չյիշատակեմք առ ագիտութեան կամ առ ի մոռացօնս կամ անուանցն բազմութեան, դու ինքնին յիշեա, Աստուած, որ գիտես զիւրաքանչիւր ուրուք զհասակ եւ զանուն, եւ գիտես եւ իւրաքանչիւր յորովայնէ մօր իւրոյ: Զի դու ես, Տէր, օգնական անօգնականից, յոյս անյուսացելոց, խռովելոց հանգիստ, նաւելոց նաւահանգիստ, հիւանդաց բժիշկ: Դու լեր ամենայն՝ ամենայնի, որ գիտես զիւրաքանչիւր ոք եւ զխնդրուածս, զտուն եւ զպէտս նորա եւ զկարիս: Փրկեա, Տէր, զքաղաքս եւ զամենայն զքաղաքս եւ զգաւառս ի սովոյ, ի սրածութենէ, ի սասանութենէ, յընկղմութենէ, ի հրոյ, ի սրոյ, ի հինէ այլազգեաց, եւ ի տոհմային պատերազմէ: Նայեա առ մեզ քաղցրութեամբ քո, Տէր, երեւեցո զերեսս քո ի մեզ գթութեամբ քո: Շնորհեա մեզ զօդս քաղցրախառն եւ առողջս, պարգեւեա անձրեւ յերկիր առ ի պտղաբերութիւն, օրհնեա զպսակ տարւոյ քաղցրութեամբ քո: Լուեցո զհերձուածս յեկեղեցւոյ քումմէ. շիջո զխռովութիւնս հեթանոսաց՝ որք կամին զպատերազմ. խափանեա զհայհոյութիւն հերետիկոսաց. ընկալ զամենեսին զմեզ յարքայութիւն քո. արա[118] զմեզ որդիս

118 "Արա„, յն. ἀναδείξας = ostendas, ցուցցես: (Տես վերը Ծան. 104)

*καὶ ἐπὶ πάντας ἔκχεον τὸ πλούσιόν σου ἔλεος, πᾶσι παρέχων τὰ πρὸς σωτηρίαν αἰτήματα, καὶ ὧν ἡμεῖς οὐκ ἐμνημονεύσαμεν δὶ ἄγνοιαν, ἢ λήθην, ἢ πλῆθος ὀνομάτων, αὐτὸς μνημόνευσον ὁ Θεὸς, ὁ εἰδὼς ἑκάστου τὴν ἡλικίαν, καὶ τὴν προςηγορίαν, ὁ εἰδὼς ἕκαστον ἐκ κοιλίας μητρὸς αὐτοῦ. Σὺ γὰρ εἶ, Κύριε, ἡ βοήθεια τῶν ἀβοηθήτων, ἡ ἐλπὶς τῶν ἀπελπισμένων, ὁ τῶν χειμαζομένων σωτὴρ, ὁ τῶν πλεόντων λιμὴν, ὁ τῶν νοσούντων ἰατρὸς. Αὐτὸς τοῖς πᾶσι τὰ πάντα γενοῦ, ὁ εἰδὼς ἕκαστον, καὶ τὰ αἰτήματα αὐτοῦ, οἶκον καὶ τὴν χρείαν αὐτοῦ. Ῥῦσαι Κύριε τὴν πόλιν ταύτην, καὶ πᾶσαν πόλιν καὶ χώραν ἀπὸ λιμοῦ, λοιμοῦ, σεισμοῦ, καταποντισμοῦ, πυρὸς, μαχαίρας, ἐπιδρομῆς ἀλλοφύλων, καὶ ἐμφυλίου πολέμου.*

**Ὁ μὲν διάκονος ἐπιστρέφει πρὸς τὴν θύραν τοῦ ἁγίου βήματος κρατῶν τὸ ὠράριον ἄκροις τοῖς δακτύλοις, καὶ λέγει.** *Καὶ πάντων καὶ πασῶν.* — **Ὁ δὲ χορὸς ψάλλει.** *Καὶ πάντων καὶ πασῶν.*

**Ὁ δὲ ἱερεὺς ἐκφωνεῖ.**

*Ἐν πρώτοις μνήσθητι, Κύριε, τοῦ ἀρχιεπισκόπου ἡμῶν,* **τοῦ δεῖνος,** *ὃν χάρισαι ταῖς ἁγίαις σου ἐκκλησίαις ἐν εἰρήνῃ· σῶον, ἔντιμον, ὑγιῆ, μακροημερεύοντα, καὶ ὀρθοτομοῦντα τὸν λόγον τῆς σῆς ἀληθείας.*

**Καὶ ὁ διάκονος λέγει πρὸς τῇ θύρᾳ στάς.**

*Τοῦ δεῖνος πανιερωτάτου μητροπολίτου, ἢ ἐπισκόπου, ὅστις ἂν ᾖ. Καὶ ὑπὲρ τοῦ προςκομίζοντος τὰ ἅγια δῶρα ταῦτα εὐλαβεστάτου ἱερέως τοῦδε, καὶ ὑπὲρ σωτηρίας τῶν εὐσεβεστάτων καὶ θεοφυλάκτων βασιλέων ἡμῶν. Καὶ πάντων καὶ πασῶν.*

**Καὶ ὁ χορὸς ψάλλει.** *Καὶ πάντων καὶ πασῶν.*

**Ὁ δὲ ἱερεὺς ἐπεύχεται μυστικῶς.**

*Μνήσθητι, Κύριε, πάσης ἐπισκοπῆς ὀρθοδόξων, τῶν ὀρθοτομούντων*[51] *τὸν λόγον τῆς σῆς ἀληθείας. Μνήσθητι, Κύριε κατὰ τὸ πλῆθος τῶν οἰκτιρμῶν σου, καὶ τῆς ἐμῆς ἀναξιότητος. Συγχώρησόν μοι πᾶν πλημμέλημα ἑκούσιόν τε καὶ ἀκούσιον, καὶ μὴ διὰ τὰς ἐμὰς ἁμαρτίας κωλύσῃς τὴν χάριν τοῦ ἁγίου σου πνεύματος, ἀπὸ τῶν προκειμένων δώρων. Μνήσθητι, Κύριε τοῦ πρεσβυτερίου, τῆς ἐν Χριστῷ διακονίας καὶ παντὸς ἱερατικοῦ τάγματος, καὶ μηδένα ἡμῶν καταισχύνῃς, τῶν κυκλούντων τὸ ἅγιόν σου θυσιαστήριον. Ἐπίσκεψαι ἡμᾶς ἐν τῇ χρηστότητί σου, Κύριε, ἐπιφάνηθι ἡμῖν [ἐν] τοῖς πλουσίοις σου οἰκτιρμοῖς. Εὐκράτους καὶ ἐπωφελεῖς τοὺς ἀέρας ἡμῖν χάρισαι, ὄμβρους τῇ γῇ πρὸς καρποφορίαν δώρησαι, εὐλόγησον τὸν στέφανον τοῦ ἐνιαυτοῦ τῆς χρηστότητός σου. Παῦσον τὰ σχίσματα τῶν ἐκκλησιῶν· σβέσον τὰ φρυάγματα τῶν ἐθνῶν, τὰς τῶν αἱρέσεων ἐπαναστάσεις ταχέως κατάλυσον, ἐν τῇ δυνάμει τοῦ ἁγίου σου πνεύματος· πάντας ἡμᾶς πρόσδεξαι εἰς τὴν βασιλείαν σου, υἱοὺς φωτὸς καὶ υἱοὺς ἡμέρας ἀναδείξας· τὴν σὴν εἰρήνην, καὶ τὴν σὴν ἀγάπην χάρισαι ἡμῖν, Κύριος*[52] *ὁ Θεὸς ἡμῶν· πάντα γὰρ ἀπέδωκας ἡμῖν.*

---

[51] Barb. *կը սկսի հոս դարձեալ այսպէս՝ μούντων τὸν λόγον τῆς σῆς ἀληθείας κτλ.* Քիչ մ'ետքը կ'ըսէ Barb. *ὄμβρους ε ἰ ρ η ν ι κ ο ὺ ς* (?)
[52] Barb. *Κύριε, ὁ θεὸς ἡμῶν.* [53] Barb. *ὁ λαός.* [54] Աս ամէն մաս-

լուսոյ եւ որդիս տուընջեան. զէօ խաղաղ-ընէ-նդ է- զէկէրդ դարձէ-եա մեզ, Տէր Աստուած մեր, զի զամենայն շնորհեցեր մեզ. եւ տուր[119] մեզ սիրտ միաբանութեան իբրեւ ի միջէ բերանոյ փառաւորել զմեծվայելչութիւն սրբութեանդ քո. — Ի ձայն — վասն զի քեզ վայելէ եւ Միածնի Որդւոյ քո հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:

[Ժողովուրդն. Ամէն]:

Սարկաւագն քարոզէ.[120] Գոհացարուք զՏեառնէ Աստուծոյ մերոյ՝ որ արժանի արար զծառայս իւր կալ առաջի սրբոյ սեղանոյս իւրոյ եւ կատարել աստուածեղէն[121] խորհուրդ մարմնոյ եւ արեան Միածնի Որդւոյ իւրոյ. աղաչեսցուք հաւատով՝ զի շնորհեսցէ զհաղորդութիւնս զայս ի պահպանութիւն պատուիրանաց:

Եւ յաղագս եպիսկոպոսին մերոյ խնդրեսցուք, զի շնորհեսցէ զնա ընդ երկայն աւուրս խաղաղութեան կենաւք եւ առողջութեամբ հովուել զժողովուրդ իւր առանց մեղաց, եւ քարոզել զբանն ճշմարտութեան եւ լուսաւոր առնել զաչս սրտից մերոց վարդապետական բանիւ:

Եւ եւս հաւատով խնդրեսցուք, յաղագս որք հաւատով ի Քրիստոս ննջեցին, զի զհոգիս նոցա ի յաւիտենական խորանսն ընկալցի, եւ զմեզ զամենեսեան պատսպարեսցէ հասանել յանվախճան ժառանգութիւն սրբոցն ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. կեցուսցէ եւ ողորմեսցի:

Ժողովուրդն. Կեցո, Տէր:

Ժ. — Քահանայն. Տէր Աստուած մեր, Աստուած կենարար. դու ուսո մեզ գոհանալ զքէն ըստ արժանի քո բարերարութեանդ,[122] որ ոչ երբեք լռես ի բարերարութենէ քումմէ: Դու, Աստուած, ընկալ զպատարագս

այժմ (L այժմ եւ:)„ ‖[213] Ձեռագիրը չունին փակագծեալը: ‖[216] ML "Աստուածայինն խորհուրդ:„ ‖[220] ML "խաղաղական կենաւք„ (L կենօք:) ‖[226] "կեցուսցէ եւ ողորմեսցի„ առութեան համար կը դնէ Յարգ. հեղինակը թէ "Պիտի ըլլայ մանաւանդ "...ի Քրիստոս Յիսուս. Տէր մեր կեցո եւ ողորմեաց:„ ‖[227] M "Դղ. կեցո՛ Տէր:„ ‖[230] L "ի բարերարութենէդ քումմէ:„ — L Դու, Տէր

119 "Եւ տուր մեզ„...: Ամբողջ այս պարբերութիւնը զի՞նչ գտնենք Դ պատարագին մէջ ալ՝ որն որ, ինչպէս չի կրնար տարակուսուիլ, ասկէ ածանցեալ է: — Յոյնը "ի միջէ բերանոյ„ին աւելցուցած է "եւ միով սրտիւ„: Յաջորդ փառաբանութիւնն ալ կը տարբերի Յոյնին մէջ:

120 Ծանօթ է Առաք. Սհմնդր. պատարագին կանոնը լմնալէն ետքը գրուած սարկաւագին քարոզութիւնը, զորն որ Daniel եւ ետքը Propst յետոյ եկած մասն համարած էին առանց հիման, եւ զորն որ Պիքքէլ պաշտպանեց. մեր երկու պատարագները նոյնը կը հաստատեն: Առաջինկայ պատարագինը բոլորովին անհետ եղած է յն. բնագրէն. ուրիշ որ եւ իցէ թարգմանութիւնը նոյնը չունի. հին հայը պահած է:

121 Ձեռագրաց "Աստուածային„ը կ'ուզէինք կարդալ "աստուածեղէն„, այն թարգմանութեան լեզուին բերման աւելի հաւատարիմ ձեւը համար: Գրչագրաց մէջ շատ ցանցառ չէ՝ "աստուածեղէն„ բառն "աստուածային„ բառով փոխանակելը:

Ժ. 122 Հիմնականն Յոյնը կը կարդայ հոս εὐχαριστεῖν σοι ἀξίως ὑπὲρ τῶν εὐεργεσίων σου,

**'Εκφώ[νως ὁ ἱερεύς.]**

*Καὶ δὸς ἡμῖν ἐν ἑνὶ στόματι καὶ μιᾷ καρδίᾳ δοξάζειν, καὶ ἀνυμνεῖν τὸ πάντιμον καὶ μεγαλοπρεπὲς ὄνομά σου, τοῦ πατρὸς καὶ τοῦ υἱοῦ, καὶ τοῦ ἁγίου πνεύματος· νῦν [καὶ ἀεί, καὶ εἰς τοὺς αἰῶνας τῶν αἰώνων.]*

**Ὁ χορός·**[53] *'Αμήν.*

**Ὁ ἱερεὺς [ἐπιστέφει πρὸς τῇ θύρᾳ, καὶ εὐλογῶν λέγει ἐκφώνως.]**

*Καὶ ἔσται τὰ ἐλέη τοῦ μεγάλου Θεοῦ καὶ σωτῆρος ἡμῶν 'Ιησοῦ Χριστοῦ, μετὰ πάντων ἡμῶν.*

[54]**[Καὶ ὁ διάκονος ἐξέρχεται εἰ ἔστιν, εἰ δ' οὔν, ὁ ἱερεύς· καὶ στὰς ἐν τῷ συνήθει τόπῳ, λέγει·** *Πάντων τῶν ἁγίων μνημονεύσαντες, ἔτι καὶ ἔτι ἐν εἰρήνῃ τοῦ Κυρίου δεηθῶμεν*

**Ὁ χορός.** *Κύριε ἐλέησον.* **Καὶ τὰ λοιπά, ὡς ἐν τῇ τοῦ Χρυσοστόμου λειτουργίᾳ.** *Ὑπὲρ τῶν προςκομισθέντων. Ὅπως ὁ φιλάνθρωπος θεὸς ἡμῶν. Ὑπὲρ τοῦ ῥυσθῆναι ἡμᾶς.]*

**[Ὁ ἱερεὺς ἐπεύχεται μυστικῶς.]**

X. *Ὁ θεὸς ἡμῶν, ὁ θεὸς τοῦ σώζειν, σὺ ἡμᾶς δίδαξον εὐχαριστεῖν σοὶ ἀξίως [ὑπὲρ] τῶν εὐεργεσιῶν σου, ὧν ἐποίησας καὶ ποιεῖς μεθ' ἡμῶν· σὺ ὁ θεὸς ἡμῶν ὁ προςδεξάμενος τὰ δῶρα ταῦτα, καθάρισον ἡμᾶς ἀπὸ παντὸς μολυσμοῦ σαρκὸς καὶ πνεύματος, καὶ δίδαξον ἁγιωσύνην ἐπιτελεῖν*[55] *ἐν φόβῳ σου· ἵνα ἐν καθαρῷ τῷ μαρτυρίῳ τῆς συνειδήσεως ἡμῶν ὑποδεχόμενοι τὴν μερίδα τῶν ἁγιασμάτων σου, ἑνωθῶμεν τῷ ἁγίῳ σώματι καὶ αἵματι τοῦ Χριστοῦ σου· καὶ ὑποδεξάμενοι αὐτὰ ἀξίως, σχῶμεν τὸν Χριστὸν κατοικοῦντα ἐν ταῖς καρδίαις ἡμῶν, καὶ γενώμεθα ναὸς τοῦ ἁγίου σου πνεύματος. Ναὶ ὁ θεὸς ἡμῶν· καὶ μηδένα ἡμῶν ἔνοχον ποιήσῃς τῶν φρικτῶν σου τούτων καὶ ἐπουρανίων μυστηρίων, μηδὲ ἀσθενῆ ψυχῇ καὶ σώματι, ἐκ*

---

բուն տեղ, որ փակագծի մէջ առնուած են, Barb. կ'ըսէ միայն այսպէս. Ὁ λαός. Καὶ μετὰ τοῦ πνεύματός σου καὶ τοῦ διακόνου ποιοῦντος τὴν μεσιν εὐχὴν ἐπεύχεται ὁ ἱερεύς. (ինչ ինչ բան անընթեռնլի է Յարգ. հեղինակին համեմատածին մէջ։) Ὁ θεὸς ἡμῶν եւն։ [55] Barb. σὺ εἶ ὁ θεὸς ἡμῶν . . . καὶ δίδαξον ἡμᾶς ἐπιτελεῖν ἁγιοσύνην. [56] Barb. ἐκ

կ'ուղղէ Բարբերինեանը ὑπὲρ վերցընելով՝ որով մինչդ հին Հայութը կ'ըսէ "գոհանալ զքեն ըստ արժանի քում բարերարութեանդ"։ Իսկ անմիջապէս յաջորդողը "որ ոչ երբեք լռես ի բարերարութենէ քումմէ", ուր յայնն է "զորս արարեր եւ առնես ընդ մեզ", մտախոհ ըլլալ կու տայ մէջի կէս մը գործուածին համար՝ որով յարաբերականը կը լուծուի ասորականութիւն մը հոտոտելով, եւ կէս մ'ալ յիշեցընելով արդէն քանի մ'անգամ յիշուած կրկնութեան՝ մէկ որոշ ձեւը, օրինակի աղագաւ՝ "արարիչ մեր, որ արարեր զմեզ յոչընչէ", եւ այլն։

ղայս, եւ սրբեա զմեզ յամենայն պղծութենէ հոգւոյ եւ մարմնոյ.[123] — Ի ձայն — եւ արժանաւորս արա զմեզ սուրբ սրտիւ եւ պարզ մտաւք բանալ զբերանս մեր[124] եւ ասել. Հայր մեր, որ յերկինս ես։[125]

*Ժողովուրդն.* Սուրբ եղիցի անուն քո, եկեսցէ արքայութիւնքո, եղիցին կամք քո որպէս յերկինս եւ յերկրի։ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսաւր, եւ թող մեզ զպարտիս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց. եւ մի տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չարէն։

*Քահանայն.* Տէր[126] տերանց, Աստուած աստուծոց, թագաւոր յաւիտենական, Աստուած անճառ, լոյս, արարիչ երկնի եւ երկրի. աղաչեմ յամենայն սրտէ իմմէ. մի տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չարէ եւ ապրեցո ի փորձութենէ. զի քո է տէրութիւն եւ արքայութիւն եւ. եւ զաւրութիւն, եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։

*Ժողովուրդն.* Ամէն։

*Քահանայն.* Խաղաղութիւն ամենեցուն։

*Ժողովուրդն.* Եւ հոգւոյդ քում։

*Սարկաւագն.* Աստուծոյ (երկիր պագցուք)։

*Ժողովուրդն.* Առաջի քո, Տէր։

ԽՈՆԱՐՀՄԱՆ ԱՂԱՒԹՔ

ԺԱ. — Հայր[127] գթութեանց եւ Աստուած մխիթարութեանց[128] որ մխիթարես զմեզ յամենայն ժամ,[129] ամենեցունց որոց խոնարհեցուցեալ

Աստուած։„ ‖[231] M ի լուսանցս "ի ձ.„ (= ի ձայն։) ‖[332] L "մտօք։„ ‖[234] Ձեռագրաց մէջ այժմ այսպէս է՝ "Դպիրքն. Հայր մեր որ յերկինսդ ես, սուրբ եղիցի . . .„ հետեւելով այժմու սովորութեան։ Աղօթքն ալ ամբողջ չեն գրած իբրեւ ամէնուն ծանօթ, այլ մինչեւ "սուրբ եղիցի անուն քո, եկեսցէ„։ ‖[238] ML սանկ կը տրոհեն բառերը. "թագաւոր յաւիտենական, Աստուած անճառ լոյս, արարիչ . . .։„ ‖[240] M "մի տանիր զմեզ ի փորձութիւն ե– մ՛ ի փորձութիւն, այլ . . .։„ ‖[241] M "ապրեցոյ։„ — L "զի քո (չկայ "է„) տէրութիւն . . . զօրութիւն . . . ։„ ‖[242] M կը գրէ մինչեւ ". . .քեզ վայելէ։„ ‖[244] ML "Դպիրք. ամէն։„ ‖[245] M "Քահ. խաղաղութիւն։ Դպ. Եւ հոգւոյ. (չկայ "ընդ։„) Սրկ. Աստուածոյ երկրպ.։ — Դպ. Առաջի քո.„ (չկայ "Տէր„։)

ԺԱ. ‖[250] ML "եւ Աստուած ամենայն մխիթարութեանց։" ‖[251] L "ամենեցուն՝ որոց . . .։„ — ML "որոց խոնարհեցուցեալ են զգլուխս . . .։„

123 "Մարմնոյ„։ Ասկէ անդին երկնցընելով կ'երկնցընէ շատաքան յոյնը, շատ անգամ յաւելուածներ ընդունող աղօթքներուն կէտերը իբրեւ պաշտօնական Ναὶ, ὁ Θεὸς ἡμῶν կամ Ναὶ, Κύριε ալ մանելով. բայց ո՛վ կրնայ երաշխաւորել թէ մասին վաւերականութեան կամ սկզբնականութեանը՝ հակառակ հին հայուն, առանց կրճատում մը հոյ գրչագրաց յայտ տպագրացաներու։ Կ'երեւայ թէ աս ընդլայնման տեսն օգնութեան առնուած է հետեւեալ մը Բ պատարագին նախ քան զհաղորդութիւն կամ յետ հաղորդութեան աղօթքները։

124 "Սուրբ սրտիւ եւ պարզ մտօք բանալ զբերանս մեր„ կը մնայ յատուկ հին Հայոյն։ Մաս. Աս. ունի "սուրբ սրտիւ„։ Սակայն առաւել մտադրութեան արժանի կէտ է՝ որ աս

τοῦ ἀναξίως τούτων[56] μεταλαμβάνειν· ἀλλὰ δὸς ἡμῖν μέχρι τῆς ἐσχάτης ἡμῶν ἀναπνοῆς ἀξίως ὑποδέχεσθαι τὴν ἐλπίδα τῶν ἁγιασμάτων σου, εἰς ἐφόδιον ζωῆς αἰωνίου, εἰς ἀπολογίαν εὐπρόσδεκτον τὴν ἐπὶ τοῦ φοβεροῦ βήματος τοῦ Χριστοῦ σου, ὅπως ἂν καὶ ἡμεῖς μετὰ πάντων τῶν ἁγίων ἀπ' αἰῶνός[57] σοι εὐαρεστησάντων, γενώμεθα μέτοχοι τῶν αἰωνίων σου ἀγαθῶν ὧν ἡτοίμασας τοῖς ἀγαπῶσί σε, Κύριε.[58]

**Ἐκφώ[νως.]**

Καὶ καταξίωσον ἡμᾶς, δέσποτα, μετὰ παῤῥησίας ἀκατακρίτως;[59] τολμᾶν ἐπικαλεῖσθαι σὲ τὸν ἐπουράνιον Θεὸν πατέρα, καὶ λέγειν,

**Ὁ λαὸς** τὸ Πάτερ ἡμῶν.

**Ἐκφώ[νως.]**[60]

Ὅτι σοῦ ἐστιν ἡ βασιλεία καὶ ἡ δύναμις καὶ ἡ δόξα τοῦ πατρός.[61] — **Ὁ ἱερεύς.** Εἰρήνη πᾶσιν. — **[Ὁ διάκονος.]** Τὰς κεφαλὰς ὑμῶν τῷ Κυρίῳ κλίνατε.

**Ὁ ἱερεὺς ἐπεύχεται.**

XI. Δέσποτα Κύριε, ὁ πατὴρ τῶν οἰκτιρμῶν, καὶ θεὸς πάσης παρακλήσεως, τοὺς ὑποκεκλικότας σοι τὰς ἑαυτῶν κεφαλὰς εὐλόγησον, ἁγίασον, φρούρησον, ἐνδυνάμωσον,

---

τοῦ ἀναξίως αὐτὸν (պակասէ.) [57] Barb. ἀπ' αἰῶνως σοι . . .[58] Հոս սովորականը դարձեալ 8 տող մը կը դնէ սարկաւագին բերանը Ոսկեբերանին պատարագէն, այն՝ զոր վերը յիշեցինք (Ὁ διάκονος. Ἀντιλαβοῦ, σῶσον, ἐλέησον ևն.) [59] Barb. ἀκατακρίτος. [60] Barb. ὁ ἱερεὺς ἐκφώ. ‖[61] Աղօթքես ետքը (Հայր մերի վերջաւորութենէն) Barb. սանկ ունի յաւելուածը Καὶ μετὰ τὸ Ἀμὴν λέγει ὁ ἱερεύς· Εἰρήνη πᾶσιν, καὶ τοῦ διακόνου λέγοντος Τὰς κεφαλὰς ὑμῶν, ἐπεύχεται ὁ ἱερεύς· Δέσποτα . . . .

«սուրբ որտիւ եւ պարզ մտօք» Պիքքէլ ալ իր Conspectus rei syr. lit. (էջ 71) Բրիտաննեան Մուզէոնին մագաղաթներէն յառաջ բերած ասորի պատարագի հատուածաւորին մէջ Նախերգանքին վերջը կը կարդայ in una concordia (ընդ հրեշտակս) anima pura et mente clara sancte clamemus et dicamus: Sanctus, sanctus, sanctus.

125 «Հայր մեր, որ յերկինս ես»: Առաջին մասը միայն քահանային բերանը դնել՝ ասորի եւ հին հայկական սովորութիւն է: Այսպէս եւ Մառեայ Ասորին:

Sacerdos:... Corde puro clamantes et dicentes: Pater noster qui es in coelis.

Populus: Sanctificetur nomen tuum etc.

Յայտնի է որ սովորութիւնը յունական չէ, հիմայ հայկական ալ չէ:

126 Այս միջարկութիւնը (embolismus) չունի յոյնը եւ ոչ ուրիշ մէկ թարգմանութիւն մը, բայց եթէ անոր ծայրի փառաւորութիւնը որ բաղմօք նման է՝ սակայն ոչ նոյն՝ մեր Ե պատարագի մէջինին:

ԺԱ. 127 Այս գլխակորութեան (κεφαλοκλύσις) աղօթքին սկիզբը, անշուշտ եղքէն, δέσποτα κύριε եկած է:

128 «Մխիթարութեանց», գուցէ վերջին գիրն աւելորդ ըլլայ, եւ եղքէն պէտք սովորութեամբ յարած: Յն. «մխիթարութեան»:

129 «Որ մխիթարես զմեզ յամենայն ժամ»

զգլուխս իւրեանց առաջի քո աստուածութեանդ,[130] քահանայից, սարկաւագաց, արանց, կանանց, ծերոց, տղայոց[131] ողորմեա, աւրհնեա[132] եւ միացո եւ ամրացո ընդ հովանեաւ ամենազաւր բազկի քո, զաւրացո յամենայն գործս բարութեան, հեռացո յամենայն իրաց չարաց շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, — Ի ծայն — ընդ որում քեզ Հաւր ամենակալի հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։

Ժողովուրդն. Ամէն։
Սարկաւագն. Պռաւսխումէն։[133]
Քահանայն. Սրբութիւնք սրբոց[134] (վայելէն)։
Ժողովուրդն. Հայր սուրբ։
Քահանայն. Աւրհնեալ Հայր սուրբ։
Ժողովուրդն. Ամէն։
Քահանայն. Աւրհնեալ Որդի սուրբ։
Ժողովուրդն. Ամէն,
Քահանայն. Աւրհնութիւն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։
Ժողովուրդն. Ամէն։

(ՅԱՒԵԼՈՒԱԾՔ ՀԱՒԱՔՉԻՆ)

Քահանայն աղաւթէ. Տէր Աստուած մեր, որ կոչեցեր[135] զմեզ յանուն Միածնի Որդւոյ քում քրիստոնեայս, եւ այլ որ ինչ ի կարգին է, որպէս եւ

‖253 L "օրհնեա։" ‖254 M "միացոյ եւ ամրացոյ .... զաւրացոյ ... հեռացոյ ...։" — L "ամենազօր ... զօրացո ..։" ‖255 L "շնորհօք։" ‖257 L անյարմար կերպով՝ "Ի— ընդ որում քեզ Հօր ..։" — ML հոս ալ՝ ինչպէս գրեթէ ամէն տեղ՝ կ'ենթեռնուն "հանդերձ ... սուրբ Հոգւոյդ, վայելէ փառք, իշխանու." (L "իշխանութիւն, եւ պատիւ։") ‖260 Միայն M ունի "Դպիրն. ամէն։" ‖261 M "Պռաւսխումէն." L "Պռաւսխումէն։" Անկէ սկսեալ մինչեւ "Տէր Աստուած մեր" աղօթքն L սանկ կը համառօտէ՝ "Քահ. ի սրբութիւն սրբոց։ Դպ. Հայր սուրբ, Որդի սուրբ, Հոգի սուրբ, օրհնութիւն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Քահ. Օրհնեալ հայր սուրբ, օրհնեալ Որդի սուրբ, օրհնեալ հոգի սուրբ։ Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ եւ։ Դպ. մէջ ամէն բանի Ամէն ասէ։" M աւելի ամբողջ ունի, բայց նաեւ աս աղաւաղ է եւ է այսպէս "Սարկաւագն. Պռաւսխումէն։ Դպիրն. Հայր սուրբ։ Քահ. Աւրհնեալ հայր սուրբ։ Դպ. ամէն։ Քահ. Աւրհնեալ որդի սուրբ։ Դպ. ամէն։ Քահ. Աւրհնութիւն եւ փառք հաւր եւ որդւոյ եւ հոգ.։ Դպ. ամէն։ Քահանայն աղաւթէ. Տէր աստուած մեր ..։" ‖271 L խորագիրն այսպէս ունի

զաւր է յոյնին եւ ուրիշ ո՛ր եւ իցէ թարգմանութեան մէջ փնտռել. ասիկայ գործեալ ինչպէս "արարիչ մեր, որ արարեր զամենայն յոչընչէ," ձեւով մեր հին թարգմանութեան յատուկ երկնութիւն մըն է։

130 "Առաջի քո աստուածութեանդ," դարձեալ շատ անգամ բռուած ընթերցուածոյ տարբերութիւն մըն է, անշուշտ բուական հին՝ բայց ոչ սկզբնական։ Յն. σοί, քեզ։

131 Ա. "քահանայից, սարկ., ար., կան., ծե.

*ὀχύρωσον, ἀπὸ παντὸς ἔργου πονηροῦ ἀπόστησον, παντὶ δὲ ἔργῳ ἀγαθῷ σύναψον καὶ καταξίωσον ἀκατακρίτως μετασχεῖν τῶν ἀχράντων [σου] τούτων καὶ ζωοποιῶν σου μυστηρίων, εἰς ἄφεσιν ἁμαρτιῶν, εἰς πνεύματος ἁγίου κοινωνίαν.*

**'Εκφώ[νως.]**

*Χάριτι καὶ οἰκτιρμοῖς, καὶ φιλανθρωπίᾳ τοῦ [[62]μονογενοῦς σου υἱοῦ, μεθ' οὗ εὐλογητὸς εἶ, σὺν τῷ παναγίῳ καὶ ἀγαθῷ καὶ ζωοποιῷ σου πνεύματι, νῦν καὶ ἀεὶ, καὶ εἰς τοὺς αἰῶνας τῶν αἰώνων* **'Ο χορός.** *'Αμήν.]*

**'Ο ἱερεὺς ἐπεύχεται.**[63] *Πρόσχες, Κύριε 'Ιησοῦ Χριστὲ, ὁ Θεὸς ἡμῶν, ἐξ ἁγίου κατοικητηρίου σου, [καὶ ἀπὸ θρόνου δόξης τῆς βασιλείας σου,] καὶ ἐλθὲ εἰς τὸ ἁγιάσαι ἡμᾶς, ὁ ἄνω τῷ πατρὶ συγκαθήμενος[64] καὶ ὧδε ἡμῖν ἀοράτως συνών·[65] καὶ καταξίωσον τῇ κραταιᾷ σου χειρὶ, μεταδοῦναι ἡμῖν [τοῦ ἀχράντου σώματός σου, καὶ τοῦ τιμίου αἵματος,] καὶ δι' ἡμῶν παντὶ τῷ λαῷ σου.*

**[[66] Εἶτα προσκυνεῖ ὁ ἱερεὺς, ὁμοίως καὶ ὁ διάκονος ἐν ᾧ ἐστὶ τόπῳ, λέγοντες μυστικῶς τρίς.** *'Ο Θεὸς ἱλάσθητί μοι τῷ ἁμαρτωλῷ.* **"Οταν δὲ ἴδῃ ὁ διάκονος ἱερέα ἐκτείνοντα τὰς χεῖρας, καὶ ἁπτόμενον τοῦ ἁγίου ἄρτου, πρὸς τὸ ποιῆσαι τὴν ἁγίαν ὕψωσιν, ἐκφωνεῖ.]** *Πρόσχωμεν.* **Καὶ ὁ ἱερεὺς ὑψῶν τὸν ἅγιον ἄρτον, ἐκφωνεῖ[67].** *Τὰ ἅγια τοῖς ἁγίοις.*

**[[68] Εἶτα τῆς μεταλήψεως τελειωθείσης, καὶ τῶν ἁγίων μυστηρίων ἀπὸ τῆς ἱερᾶς ἀρθέντων τραπέζης εὔχεται ὁ ἱερεύς.]**

*Εὐχαριστοῦμέν σοι, Κύριε, ὁ Θεὸς ἡμῶν, ἐπὶ τῇ μεταλήψει τῶν ἁγίων, ἀχράντων, ἀθανάτων, καὶ ἐπουρανίων σου μυστηρίων, ἃ[69] ἔδωκας ἡμῖν ἐπ' εὐεργεσίᾳ[70] καὶ*

---

[62] Մնացեալը չկայ ի Barb., ուր վերջաւորութիւնք իւրենին կը հասկցուին: [63] Barb ասս վերնագիրն ունի հոս. Εὐχὴ τῆς ὑψώσεως τοῦ ἄρτου. [64] Barb. συγκαθεζομενος. [65] Barb. παρών կ'ըսէ փխ. συνών. [66] Այս ամբողջ փակագծեալ մասը չունի Barb., որ ասոր տեղ պարզապէս կ'ըսէ՝ καὶ μετὰ εἰπεῖν τὸ διάκονον: Πρόσχωμεν, ὁ ἱερεύς ὑψοῖ τὸν ἅγιον ἄρτον եւն: [67] փխ. ἐκφωνεῖ կ'ըսէ Barb. καὶ λέγει. [68] Այս երկար փակագծեալ խորագիրն ալ չունի Barb., որ ասոր տեղ ուրիշ կարմրագիր ունի καὶ μετὰ τὸ εἰπεῖν τὸν λαὸν τὸ Εἷς ἅγιος, λαμβάνει ἐκ τοῦ ἁγίου σώματος μερίδας, καὶ βάλλει εἰς ἅγια ποτήρια, καὶ λέγει Πλήρωμα Πνεύματος ἁγίου (= Լրումն Հոգւոյն սրբոյ.) καὶ μετὰ τὸ πάντας μεταλαβεῖν λέγοντος τοῦ διακόνου τὴν εὐχὴν, ἐπεύχεται ὁ ἱερεύς. (շատ տեղ անընթեռնլի էր ծանօթագրութիւնս:) [69] Barb. ὧν ἔδωκας . . . [70] Barb. ἐπὶ εὐεργεσίᾳ. [71] Հոս ալ սովորականը

---

ող.„ որն որ, չենք տարակուսիր, Բարսղի պատարագին սկզբնական է, հիմնական յն. մէջ մէկդի թողուած է եւ ըստ այնմ անկէ ածանցեալ թարգմանութեանց մէջ ալ:

182 “Ողորմեա, օրհնեա . . .„ մինչեւ աղօթքին վերջը մանր տարբերութիւնք, որոնք մասնաւոր նշանակութիւն մը չունին. զորոնք պէտք չե՞նք արդեօք յոյն բնագրին մէջ յետոյ փոխուած ըսել:

183 “Պատուախումէն„, հին Ասորւոց սովորութենէն, ինչպէս կը կարծենք. չէ թէ Յունացմէ առնուած: Յունական χ գիրը Խ-ով փոխադրել շատ նոր ատեններու գործ է:

184 Մեր ձեռքի ընդօրինակութեան որն որ Մանդրանեան Օրինակէն եղած է, “Սրբութիւնք սրբոց„ կը պակսի. չենք գիտեր թէ արդեօք ձեռագիր մատենին մէջ ալ կը պակսի թէ չէ: Լուգգ. Օր. կը դնէ “ի սրբութիւնս սրբոց„, անշուշտ հասարակ սովորութեան հետեւելով՝ որով այս օրուան օրս ալ հնութեամբ յարգելի բոլոր արեւելեան պատարագներուն որոշ ձեւը աղաւաղուած է:

185 “Տէր Աստուած մեր, որ կոչեցեր„: Ահաւասիկ յառաջ քան զհաղորդութիւն աղօթք մը՝ որն որ արդեօք Բարսղի սկզբնակա՞ն է թէ մեր Ն պատարագէն հոս բերուած, կը դանդաղինք որոշելու. սա ստոյգ է, մանր տարբերութիւններ հոս եւ հոն եղածին մէջ կը

յայլ պատարագս գրեալ է, իւրաքանչիւր ոք զիւրն ասացէ՝ քահանայն, սարկաւագն եւ դպիրն:

Եւ յետ ճաշակմանն եւ հաղորդեցուցանելոյն ասեն զյցաքն: Եւ սարկաւագն քարոզէ:

Քահանայն. Գոհանամք[136] զքէն Տէր տէրանց, վասն մեծամեծ պարգեւաց քոց, զոր շնորհեցեր մեզ, զմարմին եւ զարիւն Քրիստոսի քո: Եղիցի սա մեզ յիմաստութիւն եւ ի զգաստութիւն, խորհել միշտ ի պատուիրանս քո, ի նորոգումն հոգւոց եւ մարմնոց եւ ի թողութիւն մեղաց մերոց, յընդունելութիւն Հոգւոյդ սրբոյ. վասն զի դու ես Աստուած մեր, Աստուած կենարար — Ի ձայն — եւ քեզ վայելէ ի վերայ այսր ամենայնի տուելոցս բարութեանց փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:

Ժողովուրդն. Ամէն:

Քահանայն. Խաղաղ. ամէն:

Ժողովուրդն. Եւ ընդ հոգւոյդ քում:

Սարկաւագն. Աստուծոյ երկ.

Ժողովուրդն. Առաջի քո, Տէր:

---

“Եւ քհ. ի ծածուկ:„ — Այս աղօթքն թէ M եւ թէ L այսպէս կէս ունին (մինչեւ “քրիստոնեայս„ բառը) եւ կը կցեն վերը գրուած խորատագիր-ծանօթութիւնն, ուստի այս փակագծեալ մասն ստուգիւ յաւելուած է եւ չէ պահուած նախնականն լիովին: Լի առջեւնիս եղած ընդօրինակութեան մէջ ամբողջացուած է աղօթքս այսպէս “Եւ արժանաւորս արարեր զմեզ հաղորդել մարմնոյ եւ արեան Միածնի քո, եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր արա զհաղորդութիւնս զայս ի մեղաց թողութիւն եւ գոհանալով փառաւորեսցուք զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգի:„ Բայց թէ այս մասն ալ կա՞յ L ի մէջ՝ անորոշ կը մնայ, վասն զի Յարդ. հեղինակը սա ծանօթութիւնը կցեր է՝ թէ “Այսչափ է աղօթքն Լուգդոնեան օրինակին մէջ„ ակնարկելով վերը գրուած համառօտ կտորը: ‖[277] ML աս խորատագիրն ունին “Եւ քահանայն ասէ զաղօթս (L զաղօթս) զայս: Գոհանամք . . . :„ — L ոչ ուղղութեամբ՝ “Գոհանամք . . . որ վասն մեծամեծ պարգեւաց քոց շնորհեցեր մեզ զմարմին . . .„ ‖[282] M “ի ձա.„ (= ի ձայն), L “ձայնս.„ — M “. . . տուեցելոյս բարութեանց . . . այժմ եւ միշտ եւ:„ L մինչեւ “փառք„ գրած է: ‖[285] ML “Դպիրն. ամէն:„ Յաջորդն այսպէս ունին ML “Քահ. խաղաղութիւն. (L խաղաղ. ընդ ամենեսեան.) Դպ. Եւ հոգւոյ քում. (L Եւ ընդ հոգւոյդ.) Սարկ. Աստուծոյ երկրպագ. (L եր-
տեանութիւն, եթէ Լուգդ. Օր. մէջ կարդանք. վասն զի Մոնաքոնեանը ընդարձակ չի դներ, հապա միայն գլուխը կը նշանակէ:

[136] Գոհութեան աղօթքը. post Communionem, մեզի բազմօք ճապաղուած կ'երեւայ Յոյնին մէջ, Բարսղէն ետքը. հին Հայունը, ինչպէս ամփոփ է՝ կրնայ շատ աղէկ ամբողջ ալ ըլլալ:

[137] Թէ արդեօք վերջին օրհնութեան համար ամբողջ աղօթքի ձեւ մը ի Բարսղէ իրեն εὐχῶν διάταξιςին մէջ կա՞յ, դժուարին կ'ըլլայ մեզի որոշել: Լուգդ. Օր. իբրեւ վերջին աղօթք կը կոչէ Բարսղի մէկալ հայ թարգմանութեանց մէջ գտնուած εὐχὴ ὀπισθάμβωνοςը, աղօթք մը զոր որ հիմակուան Բարսղի յունարէնը չունի. ըստ մասին ունի Goar-ի քով Pyromalեան Օրինակը: Չի կրնար ցուցուիլ թէ նախնաբար հայերէնը ունեցած ըլլայ աս աղօթքը՝ եթէ Մոնաքոնեան Օրինակին նայինք որն որ եւ ոչ ակնարկութիւն մը կ'ընէ առոր նկատմամբ. անանկ որ Լուգդունեան Օրինակին կամ անոր

*ἁγιασμῷ, καὶ ἰάσει τῶν ψυχῶν ἡ μ ῶ ν καὶ τῶν σωμάτων [ἡμῶν.] Αὐτὸς, δέσποτα τῶν ἁπάντων, δὸς γενέσθαι ἡμῖν τὴν κοινωνίαν τοῦ ἁγίου σώματος καὶ αἵματος τοῦ Χριστοῦ σου, εἰς πίστιν ἀκαταίσχυντον, εἰς ἀγάπην ἀνυπόκριτον, εἰς πλησμονὴν σοφίας, εἰς ἴασιν ψυχῆς καὶ σώματος, εἰς ἀποτροπὴν παντὸς ἐναντίου, εἰς περιποίησιν τῶν ἐντολῶν σου, εἰς ἀπολογίαν εὐπρόσδεκτον, τὴν ἐπὶ τοῦ φοβεροῦ βήματος τοῦ Χριστοῦ σου*[71]. — *'Εκφώ[νως.] Ὅτι σὺ ὁ ἁγιασμὸς ἡμῶν, καὶ σοὶ τὴν δόξαν ἀναπέμπομεν, τῷ πατρὶ, καὶ τῷ υἱῷ, καὶ τῷ ἁγίῳ πνεύματι, νῦν καὶ ἀεὶ, [καὶ εἰς τοὺς αἰῶνας τῶν αἰώνων.]*

**Ὁ διάκονος.**[72] *Ἐν εἰρήνῃ προελθῶμεν. [Τοῦ Κυρίου δεηθῶτεν.]*

**Εὐχὴ ὀπισθάμβωνος[73] [ἐκφωνουμένη παρὰ τοῦ ἱερέως.]**

*[Ὁ εὐλογῶν τοὺς εὐλογοῦντάς σε,] Κύριε ὁ Θ ε ὸ ς ἡ μ ῶ ν, [καὶ ἁγιάζων τοὺς ἐπὶ σοὶ πεποιθότας,] σῶσον τὸν λαόν σου, καὶ εὐλόγησον τὴν κληρονομίαν σου· τὸ πλήρωμα τῆς ἐκκλησίας σου φύλαξον·*[74] *ἁγίασον τοὺς ἀγαπῶντας τὴν εὐπρέπειαν τοῦ οἴκου σου· σὺ αὐτὸς ἀντιδόξασον τῇ θεϊκῇ σου δυνάμει, καὶ μὴ ἐγκαταλίπῃς ἡμᾶς, ὁ Θ ε ὸ ς, τοὺς ἐλπίζοντας ἐπὶ σέ*[75]· *εἰρήνην τῷ κόσμῳ σου δώρησαι, ταῖς ἐκκλησίαις σου, τοῖς ἱερεῦσι, τοῖς βασιλεῦσιν ἡμῶν, [τῷ στρατῷ,] καὶ παντὶ τῷ λαῷ σου. Ὅτι*[76] *[πᾶσα δόσις ἀγαθὴ, καὶ πᾶν δώρημα τέλειον ἄνωθέν ἐστι, καταβαῖνον ἐκ σοῦ τοῦ πατρὸς τῶν φώτων· καὶ σοὶ τὴν δόξαν, καὶ εὐχαριστίαν, καὶ προσκύνησιν ἀναπέμπομεν τῷ πατρὶ, καὶ τῷ υἱῷ, καὶ τῷ ἁγίῳ πνεύματι, νῦν καὶ εἰς τοὺς αἰῶνας τῶν αἰώνων.]*

---

երեք տող կը դնէ սարկաւագին բերանը՝ կրկնութիւն վերն երկու անգամ յիշուածին առաջին տողերուն։ Barb. չունի։ Barb. քիչ մ'եաքը ὅτι σὺ εἶ...։ [72] Ունի միայն Barb. այս կարմրագիր խորագիրս։

[73] Barb. εὐ. ἐπιστάμβονος. [74] Barb. կ'ըսէ հոս ἐν εἰρήνῃ διαφύλαξον. [75] Barb. ἐπὶ σοί. [76] Ասկէ սկսեալ չունի Barb. աղօթքիս վերջին այս փակագծեալ մասն. ասոր տեղ՝ Ὅτι ἅγιος ὁ ναός σου θαυμαστός ἐν δικαιοσύνῃ, και σοὶ τὴν δόξαν ἀναπέμπουμεν τῷ πατρὶ καὶ τῷ υἱῷ xία τῷ ἁγίῳ πνεύματι, καὶ ἀεὶ καὶ εἰς τοὺς αἰῶνας τῶν αἰώνων. Ἀμήν. [77] Barb. Εὐ. ἐν τῷ σκευοφυλακίῳ. [78] Փակագծեալս չկայ ի Barb., որ սկզբնագրին ուղղական կը մնայ սակայն։ Թէ արդեօք յունարէնին բուն նախնականը, այսինքն հեղինակին ձեռքէն ելած ձեւն, ունեցա՞ծ է այս աղօթքը, շատ կը տարակուսուի։ Ահաւասիկ նոյնը, որն որ Բարսղի պատարագին զանազան տեղերէն հաւաքելով առնուած վերջաբանութեան (épilogue) մը կը նմանի. ասոր հայ լեզուն խեղճ է։

“Աստուած ամենակարող եւ որոտագէտ՝ որք հաղորդեցան անարատ եւ կենդանարար խորհրդոց քոց՝ աստուածային բնութեանդ քո հաղորդեայք։ Աղաչեմք զքեզ, Տէր, մի դարձցիս եւ մեկնիս ի մէնջ, եւ մի թողուր զմեզ. այլ յամենայնի աննուազութիւն շնորհեա, զցաւս բժշկելով. ի նեղութիւնս առաջիկայ լինելով. ի չքաւորութիւնս խնամարկելով. ի փորձանաց փրկելով. Թագաւորաց ի պատերազմունս յաղթութիւն շնորհելով, քահանայից՝ հաւատոց միամտութիւն. եւ որք ազատաւորակից եղեն մեզ եւ պաշտօնակից՝ ասարհան բարի յաջողեա ամենեցուն նոցա, եւ հաւատարիմ քո ժողովրդեանս զատ ի փրկութիւն պարգեւելով զխնդիրսն յայժմու ժամանակիս, եւ ի հանդերձելումն արժանաւորեա հասանել քեզ եւ անմահ քո երկնաւոր արքայութեանդ. քանզի դու ես բարեաց բաշխող յամենայնի եւ քեզ փառս մատուցանեմք այժմ եւ միշտ յաւիտեանս„։

Նոյն երկրորդ թարգմանութիւնը ասկէ ետքը կ'ըսէ թէ՝

“Քահանայն խաչակնքէ զժողովուրդն ասելով. Օրհնեալ եղերուք ի շնորհաց Հոգւոյն սրբոյ, երթայք խաղաղութեամբ, եւ Տէր եղիցի ընդ ամենեսեան։„

290 Քահանայն. Ինքնին, անհաս, աներ, երրեակ ինքնութեանդ, հաստիչ եւ ընդունակ, միանական սուրբ Երրորդութեանդ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ժողովուրդն. Ամէն։

Ու աւրհնեալ զժողովուրդն, գնան խաղաղութեամբ։[137]

---

կրպ.) Դպ. Առաջի քո տէր։ Քահանայն...։" ‖ [290] Խորատադիրն այսպէս ունի L "Քահ. տուէ զաղօթս։" ‖ [293] L չունի "Դպիրն. Ամէն." զոր ունի M։ ‖ [294] Վերջին խորատադիրս այս ձեւով միայն M ունի "եւ աւրհնեալ զժողովուրդն գնան խաղաղութեամբ ի փառս Աստուծոյ" վերջը գրչի յաւելուածով։ Անոր տեղ L սա ծանօթութիւնը կցած է. "Քահանայն իջանէ ի մէջ եկեղեցւոյն եւ տայ զԱրձակման աղօթքն սրբոյն Բարսղի եպիսկոպոսի որ է Աստուած ամենատեսաւղ եւ սրտագէտ։ Եւ աւրհնեալ զժողովուրդն՝ արձակին խաղաղութեամբ։" Հոս կցուած է յիշատակարանս. "Բարեխաւսութեամբ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ողորմեա Քրիստոս Աստուած գրողի սորա Նիկ. (= Նիկողայոսի)։ Եւ ծնողացն մերոց որ զամենն տաեն։" — Իսկ M՝ պատարագէս վերջը գրած ունի ընդարձակ աղօթք մը սա խորագրոյն տակ. "Հետ Նարեկացւոյն աղաւթնոյն ասա զայս աղաւթքս որ ի յառաջքն կոյ գրած։ Տեառն Յոհաննու Ոսկիբերանի ասացեալ զաղաւթս. Ոչ եմ արժանի եւ ոչ բաւական որ ընդ արկաւ մտանես տան անձին իմոյ, զի բոլորովին անպատշաճեալ ի բարեաց եւ անկեալ կայ" եւն։

**Εὐχὴ ἐν τῷ συστεῖλαι τὰ ἅγια[77].**

*Ἤνυσται καὶ τετέλεσται ὅσον εἰς τὴν ἡμετέραν δύναμιν, [Χριστὲ[78] ὁ Θεὸς ἡμῶν, τὸ τῆς σῆς οἰκονομίας μυστήριον. Ἔχομεν γὰρ] τοῦ θανάτου σου τὴν μνήμην, εἴδομεν τῆς ἀναστάσεως σου τὸν τύπον, ἐνεπλήσθημεν τῆς ἀτελευτήτου ζωῆς, ἀπηλαύσαμεν τῆς ἀκενώτου σου τρυφῆς,[79] ἧς καὶ ἐν τῷ μέλλοντι [αἰῶνι] πάντας ἡμᾶς καταξιωθῆναι εὐδόκησον.[80] Χάριτι τοῦ ἀνάρχου σου πατρὸς καὶ τοῦ ἁγίου καὶ ἀγαθοῦ καὶ ζωοποιοῦ σου πνεύματος· νῦν καὶ ἀεί, καὶ εἰς τοὺς αἰῶνας τῶν αἰώνων. Ἀμήν.*

ասոր տեղ ուրիշ համառօտ խօսք մ՚ունի (անընթեռնլի։) [79] Barb. այսպէս ունի. ἐνεπλήσθημεν τῆς ἀκενώτου σου τρυφῆς, ἀπηλαύσαμεν τῆς ἀτελευτήτου σου ζωῆς. [80] Barb. վերջին տողերս այլազգ ունի, (Յարգ. հեղինակին ծանօթագրութեանց մէջ անընթեռնլի,) իսկ վերջաբանութիւնն այսպէս՝ σὺν τῷ ἀνάρχῳ σου πατρί, καὶ τῷ παναγίῳ καὶ ἀγαθῷ καὶ ζωοποιῷ σου πνεύματι, νῦν եւն։

## Գ.

## Ս· ԲԱՐՍՂԻ ԿՈՉՄԱՆ ԱՂՕԹՔԸ

*Ասանկ ահա մեր հին հայ Թարգմանութիւնը. բայց ունինք նոր մըն ալ, որն որ 11րդ դարէն ետքն եղած չէ, հաւանականօրէն Վկայասիրին ատեն, Բիւզանդեան Բարսղի Օրինակի մը Թարգմանութիւն է. կրնայ Բարբերինեան օրինակէն կանուխ ըլլալ: Բաւական ճշդութեամբ եղած կատարուած է, եւ իբրեւ այսպիսի՝ կ'արժէ որ ծանուցուի, վասն զի բաւական տարբերութիւններ եւ աւելցութիւն ունի:* Դարձեալ երկու Օրինակ է մեր ձեռքը՝ Մոնաքոնի եւ Լուգդունի: Սակայն որչափ կարեւորութիւն ունենայ, մեր բուն յենարանը կամ լծակը, ինչպէս յայտնի է, մեր հին Թարգմանութիւնն է: Ասով է որ ցուցուած կ'ըլլայ թէ անիրաւ է չափազանց անվստահութիւնը Բարսղի Բիւզանդեան բնագրին վրայ. եւ այնպէս դարձեալ աս մեր նուիրագործին եւ վարդապետին վաստակը — որն որ իր գրուածոց կարգը չէր կրնար մտնել՝ երկայն ատեն գաղտնեաց (arcani) բարեկարգութեան պատճառաւ, — չէր կրցած անարատ պահուիլ:*

*Վերջապէս Բարսեղեան բնագիրը, ինչպէս որ մեր հին Թարգմանութենէն կ'ելլէ, չթողուցած, գէշ չըլլար մէյ մ'ալ դառնալ իր “Վերակոչման Հոգւոյն Սրբոյ" աղօթքին, որն որ թէ ըստ ինքեան եւ թէ ըստ պատահման — վասն զի հիմա աս կէտին վրայ մոլորութիւն կայ, — ծանրութիւն ունի:*

*Բայց իրաւ մենք աւելի կ'ուզէինք որ աս մեր հին Թարգմանութեան Ն դարու շօշափումներն ունենայինք սոյն աղօթքին մէջ աւելի յառաջ. այնչափ նշանակութիւն ունենալով անիկայ իբրեւ աղօթք Կոչման* ('Ἐπικλήσεως.) *Սակայն ուրախ ենք որ առանց ասոր ալ վստահ ենք մեր Օրինակներուն՝ որոնք ամենայնիւ կը միաբանին յայսմ եւ բաւական են Բարսղին ճշմարիտ բնագրին վկայելով՝ ցուցընել թէ ո՛ր տեղուանք կը խոտորի Բիւզանդեանը աս մասին: Յայտնի կ'երեւայ թէ անիկայ կ'ուզէ ամենայն կերպով ուրիշ իմաստ խօթել բառերով եւ գործողութեամբք, այսինքն աւելցընելով զՀոգին սուրբ կանչելէն ետքը —* εὐλογῆσαι καὶ ἁγιάσαι (τὰ προκείμενα δῶρα), *բառեր՝ զորոնք Հայ Թարգմանութիւնը չունի. — եւ մեծ շարժման մէջ դնելովն զսարկաւագը եւ զքահանայն, վերջապէս կարծիք կը բերէ թէ հոս շատ մեծ եւ նոր գործողութիւն մը պիտի ըլլայ, որն որ կը լմննայ “Փոխարկելով Հոգւովդ քով սրբով" խօսքով: Շատ իրաւունք ունէր Եւգինէոս Դ. եւ Փլորենդեան սիւնհոդոսը՝ որ Յունացմէ բացայայտ յայտարարութիւն ուզեց իրենց մտացը՝ վտանգաւ միաբանութեան: Աս յաւելուածներուն հետ Բիւզանդեանը պահած է, ինչպէս կը կարծենք, Բարսղի գոնէ սկզբնական բառը* ἀναδείξας (*ցուցցես*), *բայց աւելցընելով նաեւ* ποίησον (*արա*)*: Հայերէնի մէջ “արասցէ" ըսելը չէ վերջնոյն, որ ան ատեն Բարսեղեան բնագրին մէջ չէր կարդացուեր. հապա առաջնոյն կը պատասխանէ, որն որ հայերէն շատ անգամ “առնել" կը Թարգմանուի անմեղ*

* Տես քիչ մ'ետքը՝ Յաւ. 6:

նշանակութեամբ, այս ինքն մէկ բանին արդիւնքն, իսկութիւնն երեւան հանել: Տարակոյս չկայ որ հիմա այնչափ գաղափարները պղտորեցին եւս «արասցէ» մը յայսմ ուրիշ մտօք կրնայ առնուիլ. բայց մեր թարգմանչին առումը, ինչպէս աղօթքին բոլոր ընթացքէն կը ցուցուի, ուրիշ էր: Նոյնը եւս ուրիշ պատարագի մէջ յայտնի կը տեսնենք, այս ինքն թէ Բարսղի բնագիրն ուրիշ բան չունէր, բայց ἀναδείξειν (ցուցանել) որ ի միոջէ հացէ եւ ի միոջէ արենէ ճաշակողները միոյ Հոգւոյն սրբոյ հաղորդութեամբ մէկ ըլլան թէ իրենց մէջ եւ թէ սրբոց հետ, որոնք յաւիտենից հաճոյ եղան Աստուծոյ: Վերջապէս մեզի կու գայ որ մեր Օրինակներուն մէջ աս աղօթքին ան մասը՝ որ կ՚ըսուի «որք ի միոջէ մարմնոյ եւ ի միոջէ արենէ ճաշակեմք,» ըլլալով հին Հայ թարգմանութեան մէջ, յոյնին պէս, ինչպէս է այսօր «որք ճաշակեմք ի միոջէ հացէ եւ ի միոջէ բաժակէ,» քաջութիւն մ՚ըրած է հայ ընդօրինակիչ մը՝ նոյնն «ի մարմին եւ յարիւն» փոխելու՝ մտածելով որ ա՛լ լռուլի անցած լմնցած է հացին եւ գինւոյն առնելը՝ որոնք մարմին եւ արիւն եղան: Սակայն ուրիշ առում մ՚ունի Բարսղի գեղեցիկ խօսքը՝ հիմնուած սրբագործեալ հացին մէկ սեղանին վրայ մէկ ըլլալէն, որն որ աս փոփոխմամբ չի լմննար:

Հայ թարգմանութիւնն, ինչպէս տեսանք, Բարսղի բնագիրը հոս կը թարգմանէ «որպէս զի արասցէ նոյն ինքն մարմին, նոյն ինքն արիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:» Շատ կ՚անիրաւենք մեր Հայոց՝ եթէ զիրենք ալ յետնոց հետ մէկ ջրով լուանք: Չէ. ինչպէս վերն ըսինք, Բարսեղ ποίη չունի. աս «արասցէ» ուրիշ բան չէ, բայց եթէ ἀναδεῖξαιին՝ զորն որ միայն Բարսեղ ունի, թարգմանութիւնը, մեր Հայոց ամէնէն բնական եւ յատուկ ձայնիւ: Թէ սոյն պատարագին մէջն եւ թէ ուրիշ տեղեր նոյնը նոյնպէս Հայերէն ըսած են «արա զմեզ որդիս լուսոյ եւ որդիս տուընջեան:» Իրենք միամտութեամբ սրտի ի՜նչ կրնային նոյն առեն մտածել որ դարեր ետքն ինչ այլանդակութեան պիտի գան իրերը. «Զհաց օրհնեալ (այս ինքն օրհնելով) մարմին ճշմարտապէս» ընելու խօսքեր չընկերանայ իրենց «արասցէ»ին: Ուստի թէ Բարսղի բնագրին եւ թէ անոր Հայ թարգմանութեան խօսքն աս աղօթքին մէջ ունեցած առաջին բնական եւ անենգ իմացուածն ուրիշ բան չէ, բայց եթէ՝ որ Հոգւոյն սուրբ ցուցընէ (յառաջ բերեալ գործքերով), թէ նոյն իսկ Քրիստոսի մարմին եւ արիւն է եւ ոչ այլ ինչ (այս ինքն հաց, գինի եւ ջուր):

Բայց թէ Բարսղի բնագիրը միայն ἀναδεῖξαι եւ ոչ ուրիշ այսպիսի իմաստ ակնարկող Բիւզանդեան բացատրութիւն մը գլխաւորաբար հոս կը գործածէ, ինք իսկ կարգ մ՚ունի «Յաղագս Հոգւոյն սրբոյ» գրքին մէջ (գլ. ԻԷ), ուր միանգամայն բովանդակ պատարագամատուցին վրայ լուսաւոր գաղափար մը կու տայ աս մեծ Նուիրագործը: Ի սուրբ Գրոց բացայայտ գրուած բան ընդունել չուզող Արիանոսաց դէմ կ՚ըսէ Սրբանելին. Τὰ τῆς ἐπικλήσεως ῥήματα ἐπὶ τῇ ἀναδείξει τοῦ ἄρτου τῆς εὐχαριστίας καὶ τοῦ ποτηρίου τῆς εὐλογίας, τίς τῶν ἁγίων ἐγγράφως ὑμῖν καταλέλοιπεν; οὐ γὰρ δὴ τούτοις ἀρκούμεθα ὧν ὁ ἀπόστολος ἢ τὸ εὐαγγέλιον ἐπεμνήσθη, ἀλλὰ καί τε προλέγομεν, καὶ ἐπιλέγομεν ἕτερα, ὡς μεγάλην ἔχοντα πρὸς τὸ μυστήριον τὴν ἰσχὺν, ἐκ τῆς ἀγράφου διδασκαλίας παραλάβομεν. Ուստի Բարսղի ἡ ἀνάδειξις հացին Գոհութեան եւ բաժակին օրհնութեան պատարագը մէկ կենդրոն մ՚ունի, որն որ գլխաւոր ալ է, այս ինքն

Քրիստոսի սահմանադրութեան խօսքերը։ "Ասոնց վրայ, կ'ըսէ Բարսեղ, է՛ ինչ որ առաջ կ'ըսենք, եւ է՛ ինչ որ ետքը, որոնք ամէնքը, թէպէտ անգիր — վասն զի արտաքոյ սուրբ Գրոց՝ — առաքեալներէն մեզի բերնէ բերան եկած են, եւ մեծ զօրութիւն ունին։" Արդ աս առաքելական ծագում եւ մեծ զօրութիւն ունեցող կարգաւորութիւնն ի՞նչ ուրիշ բան կրնայ ըլլալ՝ բայց եթէ Նախերգանը, նախ՝ իբրեւ օրհնութիւն ստեղծագործութեան երեւելեաց եւ աներեւութից. եւ ետքը՝ փրկագործութեան մարդկային ազգի ի Հօրէ եւ յՈրդւոյ եւ ի Հոգւոյն սրբոյ։ Բայց Հոգին սուրբ, ինչպէս ստեղծագործութենէն ետքը կը գրգայր, փրկագործութենէն ետքը կ'իջնայ ի վերայ՝ առաքեալ ի Հօրէ եւ յՈրդւոյ, այսպէս ալ ամէն անգամ որ ան վերնատան մի միայն պատարագը խորհրդաբար կը կրկնուի, կը կոչուի Հոգին սուրբ¹ ըստ այսմ առաքելական կարգաւորութեան իբրեւ "ի կողմանէ գործողին" խորհրդաբար ընելու սոյն էջքը "ի մեզ եւ յառաջի եղեալ ընծայս։" Այսպէս Խորհրդամատոյցը պատահական աղօթից կամ օրհնութեանց կուտակութիւն մը չէ, այլ առաքելոցմէ գծագրուած բերանացի աւանդուած գործարանաւոր կազմութիւն մըն է որ Քրիստոսի մշանջենաւոր պատարագաւը կը կրկնուի մինչեւ ի վախճան ժամանակաց։ Բոլոր ամենասուրբ Երրորդութեան առ ի ներքս յաւիտենական եւ առ արտաքս ի ժամանակի ցուցած գործողութեանց համեմատեալ կազմութիւն մ'ունին պատարագամատոյցք, որոնցմէ մէկ գեղեցիկն աս Սուրբ Վարդապետին կարգադրածն է։ Ուստի Հոգւոյն սրբոյ Կոչումն ի մասնաւորի աս առաքման եւ իջման գաղափարին վրայ հիմնուած է՝ որն որ բոլորովին բացայայտ ուրիշ պատարագի մէջ պիտ'որ տեսնենք՝ որ մեր Բարսղէն ոչ ժամանակաւ եւ ոչ անձամբ հեռու է։ Ուստի աս գաղափարը՝ որ սկզբնաբար առաքելական է, ինչպէս լսեցինք, չունի նոր [illegible] բան մը Հոգւով սրբով սպասելու՝ որն որ արդէն եղած կատարուած է, այլ միայն եղածն ի գործ դնելու եւ պտղաբեր ընելու ամենազօր շնորհօք, ինչպէս Կոչման բանքն (ἐπικλήσεως ῥήματα) եւ բոլոր Ցիշատակները կը բացատրեն։ Ուստի բոլոր Բարսղի Կոչման աղօթքը այսպիսի է. Կ'աղաչենք որ առաքես զՀոգին սուրբ ի մեզ եւ յառաջի եղեալ ընծայս, որպէս զի ցուցընէ² թէ ի Խորհուրդս յայս՝ որ Քրիստոսի նոյն իսկ մարմինն է, նոյն իսկ Քրիստոսի արիւնն է (եւ ոչ այլ ինչ, այս ինքն՝ հաց, գինի եւ ջուր). ուստի արդէն եղած փոխարկութիւնն աւելի կը հաստատէ աս աղօթքը՝ քան թէ տարակուսի տակ կը ձգէ, եւ կը սպասէ պտղաւորը որ ներքին շնորհօք զմեզ՝ զանդամներն իրարու մէջ եւ գլխոյն հետ միացընէ, երբ որ ի միոջէ հացէ եւ ի միոջէ բաժակէ³ կը ճաշակենք։

---

¹ Ըստ այսմ յարմարապէս Բիւզանդեան Բարսղի պատարագին մէջ, հոս կ'աղաղակէ քահանային հետ սարկաւագը՝ որ Հոգին սուրբ գայ հովանանայ. եւ հին տետրակներք ունին առաքեալ աղաւնին հովանացեալ սեղանին վրայ։

² Որո՞ւն յայտնի չէ որ "ցուցանել" երկրորդ նշանակութեամբ կը նշանակէ "առնել," ինչպէս "առնելն" ալ շատ անգամ երկրորդ նշանակութեամբ կ'առնուի իբրեւ "ցուցանել"։

³ Իրաւ է. ո՛չ մարմին է անիկայ՝ բայց Զե՛ւ հացի կերպարանաց տակ. արիւն է՝ բայց Զե՛ւ բաժակի ամփոփուած։

# 5.

*Գիտելիք Բարսղի հայ թարգմանութեան վրայ:*

---

## Ա.

## ԲԱՐՍԵՂԵԱՆ ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ

*Բայց մենք ի՞նչ յարգ պէտք ենք տալ այս մեր առաջնակայ թարգմանութեանց՝ թէպէտ եւ այսպէս պակասաւոր եւ մուրացածոյ աղբիւրներէ հանած ըլլանք: Մեր աս Ս. Բարսղի պատարագին հրատարակութիւնը կրկին կարեւորութիւն կամ նշանակութիւն ունի:*

*Նախ. մեզի համար ի մասնաւորի՝ գիտնոց մէջ շատոնց պակսած կէտ մըն էր՝ թէ մեր դպրութեան դարուն առաջին երկայն ամաց տասնեակները, ուր — ինչպէս տեսանք, — եւանդ ունէին աստուածային պաշտօնը հայերէն կատարելու, որո՞վ խորհրդամատուցաւ վայուեցաւ մեր եկեղեցին. վասն զի հիմա մեր ձեռքն եղածով չէր կրնար. իւրեն լեզուն չէր՝ ան ատեն. բայց առաջնակայիւս կրնար, եւ ինչպէս ընդ հուպ կը տեսնենք, իրօք գործածեց զասիկայ: Ուստի Սահակ մը եւ Մեսրոպ, Յովսէփ, Եզնիկ, Եղիշէ, եւ ուրիշ այնչափ յարգուած անձինք՝ — չենք կրնար տարակոյս ունենալ, — սո՛վ էր որ սուրբ սեղանին առջեւ կ՚ելլէին: Անոր հեղինակին համար՝ թէ ո՞վ է եւ ուստի՞, իրենք գիտէին անշուշտ. բայց միջանկեալ դարերը մեզի նոյնն իբրեւ Գրիգորի Լուսաւորչի պատարագ բերած են: Ի՞նչ ալ Ս. Գրիգորի չ՚ըլլայ:*

*Երկրորդ. աւելի ընդհանուր ուսման կէտ մըն է շատոնց յուզեալ: Ս. Բարսեղ իրօք պատարագամատոյց մը գրա՞ծ է: Ու դարձեալ՝ եթէ գրած է, կա՞յ անիկայ հիմա ի միջի, եւ ո՞ւր է:*

*Աս երկու տարակուսանաց առաջնոյն նկատմամբ՝ թէպէտ Յոյնք Զ. դարէն վկայեն, տատամսողներ շատ գտնուեցան. սակայն վերջապէս հիմակուան ատեն գրեթէ ալ անոր չի տարակուսուիր: Մտադրութեան արժանի կը համարինք՝ որ մեր վերոյիշեալ հայ մատենագիրը՝ Փ. Բիւզանդ՝ Ե. դարուն առաջին կէսին գրելով, Ս. Բարսղի պատարագը մէկ կողմանէ կը գործածէ, եւ մեկալ կողմանէ շատ ծանօթութիւններ ունի,[1] Ս. Հօր գովեստներուն մէջ չի մոռնար յիշելու*

---

[1] «Ամենայն մարդ պատուէին զՍուրբն Բասիլիոս. մանաւանդ վասն սրբութեան վարուցն նորա եւ կարգաց ճշմարտութեան եւ բազում խոնարհութեան նորա, եւ վասն առատածախս Աստուածատուրն ողորմեցն նորա, եւ վասն վարուց կարգաց պարկեշտութեանն եւ վասն աղքատասիրութեանն, եւ վասն առաքելաւոր վարուցն, եւ պատուիրանակատար մշտակիր հանապազորդութեան նորա, կամ վասն բազում գիտութեանն, զի աղբիւր էր անպակաս իմաստութեանցն, եւ վասն ուսուցիչ հաւատարիմ վարդապետութեան նորա, զի փիլիսոփայական արուեստին խնդիր արկանէր հանապազ զամենայն զօրս բացեալ զբերանս հերետիկոսացն:» Փ. Բիւզ. Պատմ. Դ, Գլ. Է, էջ 94. (տպ. Վենետ. 1832:)

անոր "աստուածախօս ջերմեռանդն" աղօթքները, անշուշտ պատարագն իմանալով։ Ինչպէս Բարսղի ընկեր եւ կենակիցը, Գրիգոր Նազիանզացին, անոր դամբանականին մէջ յիշած է ի մէջ այլոց իր մեծ բարեկամին աղօթից եւ սեղանոյ յարդարումը։ Նոյն իսկ ինք Բարսեղ (Ճառ. վասն Հոգւոյն սրբոյ) պատմած է իր աս նկատմամբ գործողութիւնը՝ երբ որ կ'ըսէ. "Աս կողման, այս ինքն Պոնտոսի, մարդկան ան սահման հաստատուն է միշտ Սրբոյն (Գրիգորի Նէոկեսարացւոյ Սքանչելագործի) յիշատակը, որ Խորհրդոյ ձեւ մը (τύπον τινὰ μυστικόν) անկէ զատ՝ զոր որ Սուրբն իրենց թողուց, չընդունեցան ան եկեղեցիքը". ուստի Բարսղի պատարագն ալ չընդունեցան. "անոր համար, կ'ըսէ, շատ բան որ անոնց քովը կ'ըլլայ, անկատար է, դրութեան հնութեանը համար. վասն զի անոր յաջորդները յանձն չառին ընդունիլ իրմէ ետքը կարգուած յաւելուածները"։ Կ'երեւայ թէ իրեն ըրած ջանքին վրայ կը խօսի Բարսեղ։

Բայց աւելի հիմնական երեւցած է Բարսղի բնագրին վրայ եղած ընդհանուր կասկածը։ Ո՛րն է Ս. Բարսղի գրածը։ Բիւզանդեանց գործածածը ծանօթ է։ Գոար իր Εὐχολόγιον (Աղօթամատոյցին) մէջ* բազմաց տարբեր օրինակ մ'ալ յառաջ կը բերէ։ Եգիպտացւոց քով Ս. Բարսեղ շատ տարբեր խմբագրութիւն ունի։ Ասորւոց քովինը՝ որն որ Հռոմ տպագրուած իրենց վեց գործածական պատարագներուն մէկն է, բոլորովին տարբեր բան է։ Անդրէի Մասիոսի ասորի ձեռագրէ մը թարգմանածն ալ մէկ տեսակ։ Վերջապէս Պետրոս Սարկաւագ Ափրիկեցի 6րդ դարուն կէսին խօսք մը կը կոչէ իբրեւ Բարսղի պատարագէն. բայց նոյնը հոս չի գտնուիր։ Ստոյգ բնագրին վրայօք անվստահութիւն եւ յուսահատութիւն տիրեց գիտնոց մէջ։ Այսպէս Բոլլանդեանք, նոյնպէս Նորագոյն ուղղափառ մատենագիրք, օրինակի աղագաւ՝ Քէօնեանք, առանց իրենց մեծ կասկածը յայտնելու չեն անցնիր։ Փաբրիկիոս (Մատենագրն. Յն., Հատ. Ը. Գլ. 10.) վճռաբար կ'ըսէ. "Նայելով Բարսղի գրած ժամանակէն ետքը այնչափ փոփոխութեանց եւ ընդմիջարկութեանց, ինչ ան պատարագին մէջ դեռ Բարսղի եղած՝ մնաց, ստոյգ կերպով որոշել՝ ո՛չ մարդկային զօրութեան չէ"։ Ո՛րչափ բողոքականաց ախորժ եղած է ասիկայ. կարճ ճամբով ազատիլ ասանկ պատարագի մը հեղինակութենէն։

Իրերը հոս ըլլալով, ի՛նչ այնչափ բնական, ինչպէս լոյս մը սպասել հիմա աս առաջիկայ հրատարակութենէ։ Վերոյիշեալն Մասիոս՝ երբ որ իր ասորական ձեռագրէն Բարսեղ մը թարգմանած ըլլալով, կ'ըսէր թէ աս ասորականը Ս. Եփրեմէն թարգմանուած պիտ'որ ըլլայ, ուստի՝ Բիւզանդեան բնագրէն ազատ եւ անկախ՝ ճշմարիտ Բարսեղեան բնագիր մը կ'երեւցընէ, անիկայ շատ բանով Բիւզանդեան յոյնին կը մօտենայ, շատ բանով անկէ գլուխ քաշած կը հեռանայ։ Բայց Եփրեմէն ըլլալը լոկ ենթադրութիւն մ'ըլլալէն զատ՝ նաեւ Բիւզանդեան բնագրէն անկախ թարգմանութիւն մ'եղած ըլլալը չ'երեւար հիմակ ան մեզի՝ այս օրւան օրս հայերէն թարգմանութիւնը տեսնելէն ետքը։ Ուստի աս վերջինէն աւելի կըսպասուի հիմա այն ծառայութիւնը՝ զոր որ Անդրէաս Մասիոս կը յուսար իր ասորականէն, այս ինքն զԲարսեղ ստուգել այսչափ տարաձայնու-

* J. Goar, *Εὐχολόγιον* sive Rituale Graecorum etc. Paris. 1647, p. 180ff. Տես այս խնդրոց մասին այժմ նաեւ F. Probst. Liturgie etc. Münster 1893, p. 377—415. ՀՐՏՐ.

թեանց մէջ։ Այո՛. ոչ կարծեմք, այլ անհակառակելի իրօք յայտնի է որ աս Հայերէն թարգմանութիւնը 406էն գոնէ քանի մը տարի ետքը, ուստի պատարագին գրուելէն իբր 40—60 տարի ետքը Հայաստան կատարուած է յունարէն բնագրէն եւ էր հայերէն ի գործածութեան։ Արդ եթէ աս պատկառելի թարգմանութեան իրաւունք ընել տանք՝ թերեւս նկատմամբ Բիւզանդեանց այսօրուան ունեցած Բարսղի բնագրին ուղղելիններ ցուցընէ, դարձեալ Բիւզանդեանց բնագիրն ամէն ուրիշ բնագիրներէ վեր է. պարապ այնչափ զինք յարգէ ձգեր են։ Կ'արդարանայ ուրեմն Բիւզանդեանն ամէնուն առջին ըստ գոյացութեան։ Սակայն կան, եւ հարկաւ պիտ'որ ըլլան, մեր թարգմանութեան Բիւզանդեան բնագրէն անկախ ըլլալովը՝ շատ մը բաներ, որոնք հոս ուղղուելին եւ ճշդուելին, որն որ քիչ ծառայութիւն չէ։

Բայց ո՛րչափ շքեղ կ'ըլլար աս արդիւնքը, եթէ աւելի քիչ մաշած գոնէ մէկ օրինակ մ'ունենալու բախտին հանդիպած ըլլայինք։

Երկու է ձեռագիր օրինակնիս բոլորդիր մատեաններուն մէջէն, երկուքն ալ անանկ մէկ սկզբնականէ մ'ածանցած՝ որն որ աղօթքներէ զատ, մանր բաները նորագոյն Խորհրդամատոյցին սովորականներովը լեցուցած է, որոնք՝ իբրեւ այսպիսիք՝ շատ ծանօթ են, եւ բաղդատելիններուն հետ շփոթուիլ չեն կրնար։

## Բ.

## ԲԱՐՍԵՂԵԱՆ ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՄԵՄԱՏՈՒԹԻՒՆԸ

*Բիւզանդեան Բարսղի պատարագին ձեւ:*

Ծանօթ է որ Կ. Պոլսոյ աթոռն իր իշխանութեամբն ու զօրութեամբ՝ որ երթալով աճում առաւ, նաեւ իր նուիրագործական կարգաւորութիւնները որոնք Յովհաննու Ոսկեբերանի անունն ունէին, բոլոր յունական Արեւելից մէջ տիրեցին, ամենայն առանձնականք խափանուելով ի գործածութենէ, նաեւ Աղեքսանդրիա եւ Անտիոք։ Բարսղինին բացառութիւն մ'եղած էր՝ բայց ոչ մշտնջենաւոր. վասն զի չէ թէ միշտ կ'ըսուէր, հապա որոշեալ ժամանակներ. այս ինքն՝

Ի կիւրակէս քառասնորդաց, բաց ի Կիւրակէէ Արմաւենեաց,
Ի մեծի Հինգշաբաթւոջ,
Ի մեծի Շաբաթուն,
Ի հսկման ծննդեանն Քրիստոսի, եւ
Յաւուր տօնի Սրբոյն Բարսղի։

Սակայն գործադրութիւն եւ կարգադրութիւն սոյն պատարագին նոյնպէս էր՝ ինչպէս Յովհաննու Ոսկեբերանի պատարագին համար ունէին։

### *Աղօթք Յառաջադրութեան*

*(Ի պտրգէ Ոսկեբ.:)*

“Քահանայն. Աստուած, Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ. (Daniel, էջ 338)։ Սարկաւագն. Օրհնեա Տէր։ Քահանայն բարձրաձայն. Օրհնեալ թագաւորութիւնն Հօր . . .։ Դասն. Ամէն։ Խաղաղականք եւ Կցորդք, որպէս

ի պատարագին Ոսկեբերանի. (Անդ, էջ 340)։ Սարկաւագն. Խաղաղութեամբ զՏէր աղաչ., Վասն ի վերուստ խաղաղ., Վասն խաղաղ. ամենայն., Վասն սրբոյ տանս, Վասն Արքեպիսկ., Վասն սրբոյ բնակ., Վասն քաղցրութեան օդոց. Վասն նաւելոց, ճանապարհորդաց. Վասն փրկելոյ զմեզ. Ընկալ. Զսուրբն, զանարատն եւն։

*Աղօթք առաջնոյ կցորդին:*

"Ի ծածուկ Քահանայն. Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ անքնին...„ (էջ 341)։ Մինչդեռ Քահանայն աղօթքը ծածուկ կ'ըսէ ի բեմին, մի եւ նոյն ատեն սարկաւագն ալ կ'ըսէ արտաքոյ բեմին Խաղաղականները։ Եթէ սարկաւագ չկայ, Քահանայն աղօթքէն ետքը կ'ըսէ Խաղաղականները, եւ անոնցմէ ետքը կը գոչէ. "Եւ եւս խաղաղութեամբ զՏէր. Ընկալ, կեցո. Զսուրբն, զանարատն...։ Քահանայն բարձրաձայն. Զի քո է կարողութիւն. (էջ 342)։ Դպրն. Ամէն։„ Ետ Խաղաղականաց Դպրը կը սաղմոսէ առաջին կցորդը կամ զնշանակեալն (τυπικὰ) եթէ կիւրակէ է, կամ զսուրբն։

*Աղօթք երկրորդի կցորդին:*

"Քահանայն ի ծածուկ: Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդս քո. (էջ 342։) Իմացիր հոս՝ առաջիններին պէս եթէ սարկաւագ կայ, եթէ չկայ։ "Եւ եւս. Ընկալ. Զսուրբն եւ զանարատն։ Քահանայն բարձրաձայն. Զի բարերար.„ (էջ 343)։ Երկրորդ Խաղաղականներէն ետքը կը սաղմոսէ Դպրն երկրորդ կցորդը կամ զերկրորդ նշանակեալները՝ եթէ կիւրակէ է, ապա թէ ոչ՝ օրւանը։

*Աղօթք երրորդ կցորդին:*

"Քահանայն ի ծածուկ. Որ զհասարակաց զայս եւ զմիաձայն մեզ պարգեւեցեր աղօթս.„ (էջ 343։) Աղօթք մուից սրբոյ Աւետարանին՝ "Քահանայն ի ծածուկ. Տէր Աստուած մեր որ կարգեցեր.„ (էջ 344։) Աղօթքէն ետքը, զորն որ թէ քահանայն թէ սարկաւագը եւ դասը թէ կ'ընեն եւ թէ կ'ըսեն՝ ինչպէս որ կ'ըլլայ Ոսկեբերանի պատարագին մէջ։

*Աղօթք երեքսրբեանին:*

Զորն որ քահանայն կ'ըսէ ի ծածուկ. "Աստուած սուրբ, որ ի սուրբս հանգուցեալ ես.„ (էջ 345։) Աս աղօթքը կատարելով եւ դասը սաղմոսելով՝ Փառք եւ Այժմ, քահանան ալ եւ սարկաւագը կը սաղմոսեն զՆերբողբեանը, եւ ուրիշ մնացածը կը կատարեն ինչպէս Ոսկեբերանի պատարագին մէջ։ Իսկ աւետարանէն ետքը՝ "Սարկաւագն. Ասասցուք ամենքեան յամենայն անձնէ. Տէր ամենակալ Աստուած. Եւս աղաչեսցուք վասն...։ Քահանայն ասէ ի ծածուկ զաղօթս. Տէր Աստուած մեր զմտադիւր զայս աղաչանս ընկալ.„ (էջ 348։)

Հոս ալ նոյները կ'ըսէ սարկաւագը՝ ինչպէս Ոսկեբերանի նուիրագործութեան մէջ. "Տեառն յաղօթս կացէք հաւատացեալք վասն։ Ուսուցէ զնոսա։ Յայտնեսցէ նոցա։ Միաւորեսցէ զնոսա։ Կեցո ողորմեաց։ Նրախայք զգլուխս„ եւն։

*Աղօթք վասն երախայից*

Յառաջ քան զսուրբ պատարագն, զոր ասէ քահանայն ի ծածուկ:
"Տէր Աստուած մեր, որ բնակեալ ես յերկինս.„ (էջ 349)
Գոչումն ըլլալէն ետքը քահանան կը բանայ կտաւն ըստ սովորութեան։

"Սարկաւագն՝ Որք երախայքդ էք, մեկնեցարուք. երախայք, մեկնեցարուք. որք երախայքդ, մեկնեցարուք. մի ոք յերախայից։ Որք հաւատացեալքդ էք։ Եւ եւս խաղաղութեամբ զՏէր...։ Դպան. Տէր ողորմեա։„

Մինչեւ ցայս վայր ոչինչ է որ Բարսղի ի մասնաւորի վերաբերի, այլ Բիւզանդեան կարգաւորութիւնն է, որն որ ասկէ ետքն ալ՝ տակաւին յարմարելով անշուշտ Լաւոդիկեայ ժողովոյն կանոնին, երախայից ի բաց գնալէն ետքը՝ հաւատացելոց 3 աղօթք ընելու, Ոսկեբերանի պատարագին մէջինին պէս, 3 աղօթք ալ հոս Բարսղի կը կարգադրէ, որոնց առաջին երկուքը դարձեալ Բարսղին օտար են, ըսելով՝

*Աղօթք հաւատացելոց առաջին:*

"Յետ սփռելոյ զկտաւն, մատուցանէ քահանայն զաղօթս ի ծածուկ.

"Դու, Տէր, ցուցեր մեզ ...„ Ասիկայ կ'առնու Բիւզանդեանը հոս՝ հին ἀναφορὰյի մը սկիզբէն, որն որ մեզի մինչեւ հիմա անծանօթ էր, զոր պիտ'որ տեսնենք ընդ հուպ, բախտով՝ մեզի համար։ Եւ կ'աւելցընէ (որն որ դեռ Բարբերինեան Օրինակին մէջ չկայ) ասանկ. "Քահանայն մինչդեռ զաղօթս մատուցանէ, սարկաւագն ասէ զԽաղաղականսն, եթէ գոյ սարկաւագ, արտաքոյ բեմին.„ "Եւ եւս. Ընկալ. Զսուրբն, զանարատն. Սարկաւագն. Իմաստութիւն։ Քահանայն բարձրաձայն. Զի քեզ վայելեն ամենայն փառք, պատիւ եւ երկրպագութիւն Հօր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Դպան. Ամէն։„

*Աղօթք հաւատացելոց երկրորդ:*

"Զոր ասէ քահանայն ի ծածուկ. Աստուած, որ հայիս ողորմութեամբ եւ գթութեամբ ի թշուառութիւն մեր, կացուցեր զմեզ զթշուառս եւ զմեղաւոր եւ զանարժան ծառայս քո յանդիման սուրբ փառաց քոց պաշտել սրբոյ սեղանոյ քում. դու զօրացո զմեզ զօրութեամբ Հոգւոյդ քո սրբոյ ի սպասաւորութիւնս յայս, եւ տուր մեզ բան ի բանալ բերանոյ մերոյ խնդրել զշնորհս սուրբ Հոգւոյդ ի վերայ ընծայիցս որ առաջի դնիցին։„ (Յակոբայ պատարագին մէջ կայ. Թիւ 24, Daniel.)

"Մինչդեռ քահանայն զաղօթս մատուցանէ, սարկաւագն ասէ զԽաղաղականսն արտաքոյ սրբոյ բեմին, որպէս զառաջինն: Յետ այնորիկ ասէ քահանայն բարձրաբարբառ. (— դեռ չկայ ասի Բարբերինեան Օրինակին մէջ. —) "Որպէս զի զօրութեամբ քով պահեալք, քեզ փառս առաքեսցուք Հօր„ եւն։ "Աղօթք, զոր ասէ քահանայն, մինչդեռ երգի Քրովբէականն. Ոչ ոք արժանի է յըմբռնելոցս մարմնաւոր„ եւն (էջ 351)։

Հոս ալ քահանան եւ սարկաւագը նոյնպէս կը կատարեն եւ կ'ըսեն՝ ինչ որ Ոսկեբերանի պատարագին մէջ կը կատարուի։ Եւ կատարուելով աղօթքներն եւ մեծ մուտքը, սարկաւագը կու գայ սովորական տեղէն ըսելով. "Կատարեսցուք զաղաչանս մեր Տեառն. վասն առաջի եդեալ պատուական..: Վասն սրբոյ տաճարիս այսորիկ..։ Վասն փրկելոյ զմեզ...։„

*Ասկէ ետքը Բարսղի առաջին աղօթքը կ'առնուի իբրեւ "Աղօթք ընծայաբերութեան* (προσκομιδῆς) *ի սուրբ սեղանն աստուածային ընծայից աւանդման,,, զոր աւէ քահանայն ի ծածուկ. "Տէր Աստուած մեր, որ ստեղծեր զմեզ.„* (*էջ* 105:)

*"Սարկաւագն" Ոսկեբերանի պատարագին պէս՝ "Ընկալ, կեցո, ողորմեա. Զօրս ամենայն կատարեալ, սուրբ. Զհրեշտակ խաղաղութեան, առաջնորդ հաւատարիմ... Զքաւութիւն եւ զթողութիւն մեղաց... Զբարին եւ զօգտակարն ոգւոց... Զմնացեալ ժամանակ կենաց... Քրիստոնէութեամբ զվախճան կենաց մերոց. Զսուրբն եւ զանարատ...: Քահանայն բարձրաբարբառ. Գթութեամբ Միածնի Որդւոյ քո ընդ որում օրհնեալ ես հանդերձ բարերար եւ կենդանարար Հոգւովդ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Դասն. Ամէն:„*

*Հոսկից յառաջ թէ ինչպէս կը համեմատի Բիւզանդեանը հայ թարգմանութեան հետ, կը ցուցնէ ասոր թարգմանութիւնը:*

---

## Գ.

### ՀԱՅ-ԲԱՐՍԵՂԵԱՆ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑԻՆ ԱՍՈՐԱԿԱՆՈՒԹԻՒՆՔՆ

*Չենք կրնար մոռնալ որ մեր երանելի Հարք միայն աս Բարսղի պատարագամատոյցով բոլոր աստուածային պաշտօնը կը վճարէին: Չունէին ուրիշ յաւելուածներ, սովորութիւններ, սարկաւագը՝ Քարոզութիւններ, հառաչանքի նման բաներ: Դեռ ասորական դպրոցին ընտանի, եւ անոր սովորութեանց մէջ դեռ նոր սնած ու ապրած, չէին կրնար աս նոր Խորհրդամատոյցով ամէն բան մէկդի թողուլ:*

*Վերն յառաջ բերուած օրինակները Բարսղի Ողջունի աղօթքէն ետքը մինչեւ անոր Նախերգանը՝ Կցորդներ* (responsalia), *ինչպէս որ մեր հիմակուան պատարագին մէջ կը գտնուին, կը լեցընեն: Բայց ասոնք երեք կարգի են, կարծենք: Ոմանք նոր առեններս Յունացմէ առնուած, ինչպէս՝ "Զդրունս, զդրունս„ եւն: Ոմանք, որոնք Բարսղին ալ չէին կրնար պակսիլ, ինչպէս՝ "Ողորմ. եւ խաղաղ. եւ պտուղ. օրհնութեան[1].„ — "Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր„ — "Գոհացարուք կամ գոհացուք զՏեառնէ„ — "Արժան եւ իրաւ:„ Ոմանք ալ յատուկ հայկականք՝ զորոնք ան ատեն ունէին, ինչպէս հին Ասորիք իրենց պատարագամատոյցներուն մէջ ունին, "Պատարագ Քրիստոս մատչի գառն Աստուծոյ:„*

*Ուրիշ էական եւ աչքի զարնող կէտեր պակաս չեն մեզի՝ որոնք մեր աս անուան Հարց ասորական ընտանութիւնը, նաեւ այս եւ սոյն Խորհրդամատոյցը գործածելու ատեն՝ պահելնին յայտնի կ'ընեն:*

1. *Բոլոր յունականներու եւ մանաւորաբար Բարսղին չէ՝ Կանոնը երեքկին "Սուրբ„ով սկսիլ. մեր հին Բարսղի թարգմանութիւնը, ինչպէս երեք օրի-*

[1] Աս "պատարագ օրհնութեան„ կարծես պատահմամբ եկած մնած է Նախերգանին մէջ:

*նակներն ալ ունին, կը սկսի՝ "Սուրբ, սուրբ, սուրբ" ըսելով։ Սովորութիւն մը՝ զոր յաճախ եւ միայն Ասորւոց պատարագներուն մէջ կը գտնենք, ինչպէս որ Ռենալդոսի քով կը տեսնենք։ Աս սովորութիւնը մեր Բարսղին պատարագէն ետքն առնուած յոյն պատարագներուն ալ մերձեցուցին Հայք։*

2․ *Տէրունական աղօթքն Յոյնք բովանդակապէս մինակ ժողովրդեան կուտան զրուցել․ իսկ Արեւմուտք կը զրուցէ բովանդակ՝ քահանան։ Ասորին, ինչպէս մինչեւ ցայսօր եւ ինչպէս վերոյիշեալ հեղինակին քով կը տեսնուի ասորի պատարագներուն մէջ, մաս մը քահանայն կ'ըսէ, եւ կը շարունակէ ժողովուրդը։ Մեր թարգմանութեան օրինակները, վասն զի շատ նորաձեւ եղած են, չեն կրնար վկայել մեզի․ բայց ունինք բաւական անտարակուսելին․* 5րդ *դարուն առաջին կիսուն գրուած պատարագի մը ուրուագրութիւնն, ուր նախ քահանան "Հայր մեր, որ յերկինս" կ'ըսէ, ինչպէս վերն յիշուեցաւ։*

3․ *Հաշտակաւոր եւ անպակաս է արեւելեան պատարագաց "Սրբութիւնք սրբոց" = յն․* τὰ ἅγια τοῖς ἁγίοις. *Ասորիք ասիկայ կ'իմանան եւ կը թարգմանեն միշտ* Sancta Sancto (*կամ* Sanctis) decent. (*Տես նոյնպէս վերոյիշեալ հեղինակին հաւաքման մէջ։*) *Ճիշդ նոյնպէս Հայք ալ առեն։ Մեր կրկին Օրինակները, աւաղ, հոս բանի մը չեն ծառայեր․ վասն զի մէկը (Մոնաքոնեանը) բոլորովին մոռցած է․ միւսն ալ (Լուգդունեանը) սովորական պատարագէն առնելով դրած է ան մասը՝ "Պռուսխումէն, ի սրբութիւնս սրբոց" ըսելով։ Աս խառնակութիւնը ուստի՞․ բայց եթէ անկէ որ չեն ուզած շփոթել քահանան իրեն ձայնարկութեան առեն։ Բայց բարեբախտութեամբ ունինք ուրիշ տեղէն որ մեր հին թարգմանութիւնն ունեցած է "Սրբութիւնք սրբոց վայելեն։" Վկայ անսուտ նոյնը գործածող Յովհան Մանդակունի՝ որն որ ԻԲ․ ճառին մէջ պատարագին ստէպ ակնարկելով կ'ըսէ "Սրբութիւնք սրբոց վայելեն։" Նոյն ունակութենէն է որ, ինչպէս պիտ'որ տեսնենք քիչ մը ետքը, նոյն դարուն՝ ուրիշ պատարագի մը մէջ* τὰ ἅγια τοῖς ἁγίοις *բառերն ուրիշ թարգման մ'ալ թարգմանէ "Սրբութիւնք սրբոց վայելեն" եւ ոչ այլազգ։*

4․ *Աս ժամանակէն է որ քանի մը կցորդներ ունինք այնպիսի կազմութեամբ, ինչպէս Ասսեմանի իւր* Cod. liturgicus *գրութեան մէկ հատորին մէջ իբրեւ* antecommunio *միախումբ ըրած է, որոնք "Թովմայ առաքելոյ" անուամբ մեր պատարագաց գրքերուն մէջ երբեմն կը գտնուին, կատարեալ* 5րդ *դարուն առաջին կիսուն լեզուաւ, այսպէս․**

*"Մարմին քո անապական լեցի ինձ ի կեանս, եւ սուրբ արիւն քո ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։*

*Ու փոխանակ լեղւոյն՝ զոր արբեր վասն մեր, բարձցի ի մէնջ լեղութիւն թշնամւոյն։*

*Ու փոխանակ քացախոյն՝ զոր ճաշակեցեր վասն մեր, զօրասցի տկարութիւնս մեր։*

*Ու փոխանակ թքոյն՝ զոր առեր վասն մեր, ընկալցուք մեք զցաւղ անմահութեան։*

*Ու վասն հարուածի եղեգան՝ զոր հարար վասն մեր, ընկալցուք զկատարեալ կեանս։*

---

* *Դրինք ըստ ձեռագրին մեր Մատենադարանի Թ․ 195, Թղ․ 150ա-151բ։ Կայ նաեւ ուրիշ ձեռագրաց մէջ քիչ տարբերութեամբ։ ՀՐՏՐ․*

*Եւ ընդ փշեղէն պսակին զոր եդին քեզ վասն մեր, ընկալցուք զանթառամ պսակ սիրոյ քո ընդ սիրելիսն քո։*

*Եւ փոխանակ մահուան քո, կենդանացուսցես զմեռեալս մեղաւք։*

*Եւ փոխանակ պատւոյն զքեզ պաստառակալաւ, զաւրութեամբ քով պընդեսցուք մեզ ի սէր աստուածութեանդ քո։*

*Եւ զի թաղեցար ի նոր գերեզմանի, ընկալցուք (ձեռ. “ընկալաք„) մեզ դարձեալ զնոր յաւիտեանն որ ի քէն եղեւ։*

*Եւ վասն յարութեան քո ի մեռելոց, եւ մեզ եղիցի յարութիւն ի կեանս անմահ։*

*Եւ ընդ (գուցէ՝ յ)արդար դատաստանաց քոց, լիցուք փրկեալք յաններելի տանջանացն։*

*Գոհութիւնս այս եղիցի մեզ ի կեանս եւ յուրախութիւն, յառողջութիւն հոգւոց, եւ ի բժշկութիւն մարմնոց, ի թողութիւն մեղաց, եւ ի փառս քո Քրիստոսի Աստուած մեր, այժմ եւն։„*

*Ո՛րչափ նման են ասոնք Եփրեմի կցուրդներուն, զորոնք Հաղորդութեան վրայ շինած է։ Նոյն ատեն թարգմանած էին մեր Հայք։*[1]

*Աւելորդ է աս մեր պատարագին լեզուական ասորականութեանց մտադիր ընել մեր ընթերցողները. օրինակի աղագաւ՝ սա մէկ բառի տեղ ածող բառերը — “կենաց եւ փրկութեան„ — “քաւութիւն եւ թողութիւն.„ — որոնք յունարէնին մէջ ոչ զոյգ՝ այլ մէկ բառեր են։ Նոյնպէս աւելադրութիւն “աստուածութեան.„ օրինակի աղագաւ՝ փոխանակ “առաջի քո„ ըսելու՝ ըսել “առաջի աստուածութեան քո„ եւ այլն։*

*Բայց մերինները Ս. Բարսղի բնագրէն դուրս ուրիշ բան ալ ունէին աս պատարագին հետ։*

*Սարկաւագը կը քարոզէր։ Աս քարոզութենէն մէկ մը երկուք մը մինչեւ հիմա մնացած է, ոչ կատարեալ այնպէս՝ ինչպէս ան ատեն էին, բայց տակաւին բաւական գեղեցիկ եւ յարգելի հնութեան բուրմամբ։ Մի միայն կտոր վերյիշեալ Մանդակունիէն, նոյն ճառին մէջ բարեբախտութեամբ ունինք իբրեւ ճաշակ մը հնագունին՝ որուն վրայ շինուած է կրտսերագոյն մը։ Յիշեալ կտորն իբրեւ բառ առ բառ բերուած սանկ է։*

*Սարկաւագը նախ դուրս կը հանէ եկեղեցիէն Հաղորդութեան արժանի չեղողները հրաման ընելով կոչուկ՝ “Մի ոք յերախայից, մի ոք ի թերահաւատից եւ մի ոք յանյուսից„։ Ասիկայ՝ եկեղեցիէն դուրս եղողներուն։ Մնացողներուն կ՚ըսէ աղաղակելով. “Հայեցարուք յանձինս ձեր. եւ զսիրտս ձեր քննեցէք. մի խղճիւ ոք եւ մի նենգութեամբ. մի խորամանգութեամբ ոք եւ մի պատրանօք. մի երկմտութեամբ եւ[ս] եւ մի թերահաւատութեամբ մերձեսցի„։ (Գուցէ նաեւ սա) “Ջի սրբութիւն Խորհրդոյն սրբոց եւ անարատից վայելէ։„ Աս կտորը սամ՛ մեզի նշանաւոր է որ իր ետեւն ու առջեւն անշուշտ ունեցած եւ հիմա մեզի համար, ափսոս, չմնացած մասերով՝ անանկ մասնաւոր ժամանակի — ըսենք՝ Ս. Սահակայ կամ Ե. դարուն առաջին կիսոյն — կը վերաբերի՝ որ*

---

[1] Ունինք դեռ պակասաւոր Օրինակ՝ նոյն ատեն թարգմանած, վասն զի ոսկեղէն է լեզուն.

ուրիշ թէ՛ լեզուի մաքրութիւն, թէ՛ յօրինուածոյ եկեղեցական վեհութիւն եւ օծութիւն մ'ունին, եւ որոնց ընկերներին մէջ ընդ մէջ ծիսարանին եւ Աղօթամատոյցին աղօթից մէջ երեւան կու գան։ Ուստի վերջիններէն մինչեւ հիմա ունեցած եւ գործածած սարկաւագին մէկ կամ երկու Քարոզութեանց մասին, ինչպէս մեր Ժամագրոց մէջ Մանդակունոյն Քարոզութիւններն իրենց մաքրութեան մէջ յառաջ բերած մասին, այնպէս կը համեմատին՝ ինչպէս Սաղմոսաց կանոններէն ետքը եղած աղօթքներն որ հիմա ունինք ու կը հաւնինք, կը համեմատին Սահակայ գրուածներուն. այս ինքն որ վերստին գրութիւն մըն են ասոնք Սահակայ գրուածներուն վրայ (ի ձեռն Մանդակունոյն). իսկ հարազատ նախնականներէն հազիւ մէկ զոյգն ազատած է մեզի Իմաստասէր իր "Կանոնաց հաւաքման„ մէջ, եւ մէկալնոնց՝ (այս ինքն հարազատներուն) սկզբան բառերը։ Այսպէս իրարմէ կը զատուին Ե. դարուն սկիզբները եւ վերջերը։

## 6.

*Բարսղի Պատարագին երկրորդ Թարգմանութիւնը:**

## Ա.

### ԲԱՐՍՂԻ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԸ

Կեսարիոյ նշանաւոր Հօր պատարագին կրած կերպարանափոխութիւնը կը ստիպէ որ հոս՝ ընդհատելով Հայոց Պատարագամատուցաց պատմութեան ժամանակագրական կարգը՝ հինգերորդ դարու սկիզբներէն մինչ իբր Թ—Ժ դարերն անցնինք ոստմամբ։ Հինը տեսնելէն ետքը՝ կը մնայ նորն ալ տեսնել այն Պատարագին, որ դարերով բոլոր Արեւելից մէջ առհասարակ ընդունուած էր, մինչեւ որ Յովհաննու Ոսկեբերանի անունը կրող բիւզանդեան երկայնաբան Պատարագն երկրորդական տեղի մը տուաւ առաջնոյն՝ անոր գործածութեան քանի մ'օրեր միայն վերապահելով։ Մեր ժրաջան նախնիք չէին կրնար Բարսղի անուն կրող Պատարագ մ'անտես ընել եւ չթարգմանել, երբ բուն Բարսղինն իրենց համար անծանօթ եղած էր՝ կեղծ (թէեւ շատ յարգի) անուն մը կրելով՝ Գրիգորի Լուսաւորչի։ Թարգմանութիւնը կատարուած լմնցած է Լամբրոնացւոյ եւ անկէ կանուխ Գր. Մագիստրոսի օրերէն յառաջ։ Բարսղի անուամբ այս Պատարագը նախնական բնագրին գրեթէ կրկին ծաւալն առած էր բազմաթիւ եղանակաւորութիւններով. եւ այն անուամբ ու այն ձեւով ծանօթ էր Բիւզանդեանց։

Որչափ ալ զբուն Բարսեղ չներկայացընէ այս վերջինն, արժանի է ծանօթանալու։ Նորն ալ մեծ ծառայութիւն կը մատուցանէ յունարէն բնագրին համար, գոնէ հասակակից ըլլալով ծանօթ ամենահին ձեռագրին՝ Բարբերինեան օրինակին, եւ բաւական շեղելով անկէ։ Բնական էր որ Բարսղի պատարագին բազմակերպ խմբագրութեանց վրայ նոր մըն ալ աւելնալով՝ նախնականին որպիսութեան մասին եղած տարակոյսներն ու շփոթութիւնն աւելի սաստկանային,

* Այս ամբողջ գլուխը եւ Բարսղի Պատարագին նորագոյն թարգմանութեան բնագրին հրատարակութիւնը եւ ծանօթութիւնքն մեզմէ են: Յարգ. Հեղինակին դիտաւորութեան համապատասխանած կ'ըլլանք ասով, վասն զի թէեւ յայտնապէս կը յայտարարէ (տես վերը՝ էջ 160) թէ աս նոր թարգմանութիւնն ալ արժանի է ծանօթանալու, ո՛չ նոյն բնագիրն եւ ո՛չ անոր մասին որեւէ խօսք գտանք հեղինակին ձեռագրին մէջ: ՀՐՏՐ:

եթէ չըլլար հայերէն հնագոյն թարգմանութիւնը, որ բոլորովին կղզիացեալ դիրք մ՚ունի միւս ամէնուն դիմաց, մինչդեռ յունարէն կրկին ձեւերն, ասորականն ու եգիպտականն՝ հայերէն նոր թարգմանութեան հետ՝ միեւնոյն կաղապարէն ելած են[1]. որչափ ալ մանրամասնութեանց մէջ իրարմէ քիչ շատ խոտորին՝ բիւզանդեան դրոշմն ամէնուն վրայ հաւասարապէս կը տեսնուի։ Այինանք հնագոյն հայերէն թարգմանութիւնը՝ Կապադովկեան Բարսղի Պատարագ անուանել, վերջիններն եւ հայերէն նոր թարգմանութիւնը՝ Բիւզանդեան Բարսղի. երկու խմբին նկարագրական յատկանշանը բացատրուած կ՚ըլլայ այս անուանակոչութեամբ։ Այս զանազանութիւնը շատ տեսակէտով կարեւոր է։

Թէ Ս. Բարսեղ Պատարագ մը յօրինած է, ստոյգ է[2]։ Բայց թէ ի՛նչ վստահութիւն ունենալու է, նոյն հայրապետին անունը կրող գրութեան, խնդիր մըն է՝ զոր գիտնականք շատ տարբեր կերպով կը լուծէին եւ կը լուծեն։ Դժուարութեան գլխաւոր կէտն այն պատարագին ներքին որպիսութիւնն է։ Ջուր ջանք է նոյն Հօր գրուածքներուն մէջ փնտռել իր Պատարագին նոյն իսկ կմախքն ու հարազատ բնագիրը վերականգնել։ Քանի մ՚անուղղակի ակնարկութիւններէն զատ՝ որոշ եւ շօշափելի արդիւնք մը գտնել կարելի չէ եղած տակաւին՝ ինչպէս կը միաբանին շատ գիտնականք, նոյն Հայրը "Գաղտնեաց բարեկարգութեան" խիստ հետեւող ըլլալով։ Բացայայտ եւ ընդարձակ տեղեկութիւն կու տայ առաջին անգամ Ոսկեբերանի բարեկամն Պրոկղ՝ որ 434ին հայրապետ եղաւ Կ. Պոլսոյ։ Հատակոտոր մը մնացած է Պրոկղի "վասն աւանդութեան աստուածեղէն պատարագի" գրուածքէն,[3] որուն էական կէտերն հետեւեալներն են։ Առաքելոց աշակերտներն եւ յաջորդները, կ՚աւանդէ Պրոկղ, թողուցին գրաւոր Պատարագներ, յիշելով յանուանէ Կղեմայ եւ Ս. Յակոբայ անուամբ պտըտող պատարագամատոյցները։ "Այլ երբեւ եւս, կը յաւելու, Ս. Բարսեղ զգուշութիւն եւ զվատթարութիւն մարդկան որ խորշէին յերկարօրէնէն Պատարագամատոյցին, համառօտ արար զընթերցուած նորա, ոչ զի երկարաձիգ ինչ համարէր զայն,

[1] Յունարէն բնագիրը բաց ի Goar-ի (Εὐχολόγιον sive Rituale Graecorum. Parisiis. 1647 pp. 158—179, նաեւ pp. 180—186 Պիրամալեան օրինակին բնագիրը,) եւ H. A. Daniel-ի (Codex liturgicus. IV. Lips. 1853, pp. 421—438) հրատարակութիւններէն՝ լոյս տեսած է շատ անգամ. Նորերս՝ C. A. Swainson, The Greek Liturgies (Cambr. 1884. pp. 74—87. տես նաեւ 149—71.) Euchologion, Romae 1863, p. 81—104, եւ ուրիշ տեղեր՝ այսպէս Migne, Patrologiae Cursus. Ser. Gr. XXXI, p. 1629—1678. Քիչ ժամանակ յառաջ Probst այնչափ յարգ տուաւ Բիւզանդեան Պատարագին այն խմբագրութեան որ Իսիդորի Պիւրոմալի Ջահանայեայ տարկուագին անունը կը կրէ, մինչեւ Բարսղի հարազատ բնագիրը համարեցաւ եւ Die Liturgie գրութեան մէջ (Münster 1893, pp. 390—408) թարգմանեց գերմաներէնի։ Ասորականն ու եգիպտականը (ղպտի) նոյնպէս ծանօթ են՝ գոնէ լատինական թարգմանութեամբ. առաջինը Անդրէաս Մասիոսէ՝ Anaphora divi Basilii episcopi Caesareae Cappadociae ex vetustissimo codice Syriaco …traducta per Andream Musium (տես Moses Bar Cepha, De Paradiso, trans. A. Masius. Antwerp. 1569, pp. 235—54, նաեւ pp. 254—6 Precatio Basilii.) Եգիպտականը հրատարակեց R. Tuki, Missale coptice et arabice. Rom. 1736 (կայ հոն ի մասնաւորի երկու Պատարագ՝ Բարսղի եւ Կիւրղի անուամբ, զորոնք թարգմանած էր Renaudot, Liturgiarum orientalium collectio. Parisiis. 1716.)

[2] Բարսղի վրայ երբեւ "Բարեփոխիչ Պատարագաց" եւ իր Պատարագին մասին՝ տես այժմ Probst-ի յիշեալ գործը, էջ 377 եւն։ — Probst Նազիանզացւոյ այն խօսքը թէ Բարսեղ "Սահմանադրութիւն աղօթից" (εὐχῶν διάταξις) յարդարած է, Պատարագի վրայ կ՚առնու հաստատութեամբ, եւ իրաւամբ։

[3] Պրոկղի գործքերուն հայերէն թարգմանութեանց մէջ հանդիպած չենք ցայսօր այսպիսի գրուածքի մը։

այլ զի կարճիցէ զձանձրութիւն աղօթակցացն եւ զունկնդրացն առ երկարու-թեան ժամանակին։„ Աւելի որոշ կը խօսի քիչ մ'եաքն՝ յայտարարելով որ շա-տերուն "տաղտուկ բերէր երկարութիւն„ պատարագին, այնպէս որ քիչերը սկսած էին ներկայ գտնուիլ աստուածեղէն պաշտաման։ "Ասոր դլրգեալ Ս. Բարսղի՝ իբրեւ դեղ իմն ընդդէմ ախտին՝ համառօտ կարճեաց զկարգ պաշ-տամանն։ Յետ սակաւ ժամանակի կամեցաւ սուրբ Հայրն մեր Յովհ. Ոսկեբերան՝ փութով ջանիւ հոգացեալ վասն փրկութեան հօտին՝ որպէս վայել է հովուի, առ կարճմտութեան բնութեան մարդոյ զամենայն սատանայական պատճառանս արմատաքի խլել։ Վասն որոյ ի բաց կարճեաց եհան բազում ինչ եւ ի համառօ-տագոյն կերպարանս ամփոփեաց„ եւն։ Այսպէս Պրոկղի հաւաստիւմ վկայու-թիւնը։ Բայց նոյն իսկ այս վկայութիւնն բիւզանդեան պատարագաց ծանօթ ձեւերը կասկածելի կ'ընէ։ Ոսկեբերանի Պատարագն՝ բիւզանդեան արդի հան-դամանաց մէջ՝ անսպառ երկայնաբան գրութիւն մըն է՝ քանի մ'անգամ աւելի երկայն քան Բարսղինը. վերջինս ամենեւին համառօտ չէ։ Հօս է հին հայերէն թարգմանութեան յարգը. համառօտ Բարսեղն ահա առջեւնիս հինգերորդ դարու լեզուաւ՝ Պրոկղի աւանդածը լիովին հաստատելով։

Բայց այս միայն չէ հին թարգմանութեան ծառայութիւնը։ Ունենալով առջեւնիս Պրոկղի յիշած բնագիրն՝ կը լուծուին այն դժուարութիւնք եւ առարկութիւնք որ կը հանուէին Պետրոսի Սարկաւագի եւ Սոյն-Ամփիղոքիոսի յիշատակութիւններէն ընդդէմ Բարսղեան պատարագին հնութեան, բիւզան-դեան ձեւերին համար քիչ շատ իրաւամբ։ Պետրոս սարկաւագ 512էն քիչ մ'ետքը թուղթ մ'ուղղած է "վասն մարմնանալոյ եւ շնորհաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի առ Փուլգենտիոս եւ առ այլ եպիսկոպոսունս Ափրիկէի„։ Այս թղթին մէջ կայ հետեւեալ կտորը. "Նաեւ երանելին Բարսեղ եպիսկոպոս Կեսարացւոց յԱղօթս ուրեք Սեղանոյն՝ զոր գրեաց ամենայն Արեւելք ի կիր արկանեն, ասէ. Տուր Տէր զօրութիւն եւ հաստատութիւն. աղաչեմք՝ արա զչարսն բարիս, զբարիսն պահեա ի բարութեան, քանզի ամենայնի կարող ես եւ ոչ ոք է որ ընդդէմ դառնայ քեզ, զի յորժամ կամիս՝ փրկես եւ ոչ ինչ հակառակ կայ կամաց քոց։„ Ահա կոչում մը Բարսղի բոլոր Արեւելք տարածուած պատարագէն. տարակոյս չկայ ասոր՝ վասն զի այս կոչմանդոնէ էական մասն կայ արդի բիւզանդականին մէջ՝ "զբարիսն բարիոք պահեա եւ զչարսն դարձո յուղղութիւն քաղցրութեամբ քո Տէր։„ Բայց հոս է նաեւ դժուարութիւնը։ Պետրոս Սարկաւագի կոչումը բառ-առբառ չկայ մեր ունեցած Բարսղի պատարագին մէջ, ուստի — կը հետեւցընեն առարկողք — արդի բնագիրը չի կրնար այն Բարսղինն ըլլալ։ Ընդհակառակն Պետրոս հարեւանցի եւ ոչ թէ բառական կոչում ըրած է՝ կ'ըսեն պաշտպանք։ Մինչ որ ճիշդ այս տեղը (կոչումն է Յիշատակաց մասէն) այնպէս թերի եւ կի-սատ կ'աւանդեն ձեռագիրք հին հայերէն թարգմանութիւնը։ Ցամենայն դէպս՝ եթէ Պետրոս Սարկաւագ բառացի կոչում ըրած է՝ կը ցուցնէ միայն որ 512էն առաջ բնագրի փոփոխութիւն կրած ըլլալու էր Բարսղի պատարագը։ Այս խնդ-րական կէտին մէջ նոր թարգմանութիւնը բիւզանդական բնագրին համաձայն վկայութիւն կու տայ։

Բառական կոչում մը կայ նաեւ Նիկիոյ երկրորդ ժողովոյն (787ին) Արձա-նագրութեանց մէջ, որ արդէն բոլորովին նոյն է բիւզանդեան խմբագրութեան հետ։ Կոչումն է հետեւեալը. "Որպէս գիտեն ամենայն քահանայք սրբոյ պաշ-

տամանն, ասէ Բարսեղ յաղօթս աստուածեղէն Պատարագին. Վստահեմք (θαρροῦντες, նոր հայ թրգմ. «համարձակելով») եւ մերձենամք ի սեղան քո սուրբ, եւ առաջի եդեալ զօրինակս սուրբ մարմնոյ եւ արեան Քրիստոսի քոյ՝ զքեզ աղաչեմք եւ ի քէն հայցեմք, եւն։ Շատ կարեւոր վկայութիւն մըն է այս. Նախ Բարսղի նախնական արդէն փոփոխուած եւ ընդհանուր եղած է 787էն[1]. երկրորդ՝ ժողովոյն կոչումը ճիշդ նոյն է հայերէն Նոր Թարգմանութեան հետ, մինչդեռ բիւզանդեանն չունի «համարձակիմք» ընթերցումը։ Ինչպէս հոս՝ նոյնպէս շատ տեղեր կան՝ ուր Նոր Թարգմանութեան ալ արժէքը պայծառ երեւան կու գայ՝ իբրեւ գլխաւոր վկաներէն մին բիւզանդեան Բարսղի բնագրին։ Մեծ վստահութիւն կը ներշնչէ հայն անով ալ որ շատ մասամբ կը համընթանայ Բարբերինեան օրինակին, որ Ը դարուն գրուած է, եւ որ համեմատութեամբ միւս օրինակաց՝ հնագոյն խմբագրութիւն մը կը ներկայացընէ։ Կարծենք թէ այս համաձայնութիւնը լիովին պիտի ըլլար, եթէ բախտը շնորհէր մեզի՝ աւելի անաղարտ հայերէն օրինակներ ունենալ. այժմու ծանօթ երկու ձեռագիրքն ալ դժբախտաբար ազատ չեն յետամուտ յաւելուածներէ՝ գլխաւորաբար մեր սովորական պատարագէն։

Հայերէն թարգմանութեամբ ալ կայ՝ սուտութեամբ Ս. Ամփիղոքիոսի ընծայուած «Վարք Ս. Բարսղի», եւ անոր մէկ տարբեր խմբագրութիւնն Ելլադիոսի անուամբ։[2] Այս Վարքն՝ որ աւելի զրոյցներ կը պարունակէ քան պատմութիւն, յամենայն դէպս Թ դարէն յառաջ հեղինակուած էր. վասն զի նոյն դարուն Նիկասարկաւագն Ուրսոս լատիներէնի փոխադրած է։[3] Բարսղի պատարագն այսպէս կը յիշատակուի ասոր մէջ. «...յարուցեալ (Բարսեղ) դողութեամբ

[1] Հինն է՝ «Համարձակիմք մերձենալ յանարատ եւ ի սուրբ սեղանս քո եւ դնել աւրինակ մարմնոյ եւ արեանն Քրիստոսի քո։» Տես վերը՝ Աղօթք Ը. (ծան. 101—103։)

[2] Յայսմաւուրքներուն մէջ (տես Ցուցակ Ձեռագր. մատենադարանիս՝ Թ. 7, Բ § 14. Թ. 10 § 131. Թ. 219, Բ. § 3 եւն. Յայսմաւուրք Կ. Պոլսոյ տպագրութիւն 1834, էջ 1—6։) Իսկ «Պատմութիւն եւ խօսք Ելլադիոսի յաղագս վարուց ...Բարսղի» եւն՝ լոյս տեսած է Վենետիկ. (Վարք եւ Վկայաբանութիւնք, 1874. Հտր. Ա, 220—245։)

[3] Probst (p. 387) երկու կէտի վրայ դնել կու տայ՝ որ կեղծ Վարուց հեղինակին գիտակալ նպատակը կը յայտնեն։ Նախ թէ Ս. Բարսեղ մաս մը պահած ըլլայ Ս. Հաղորդութենէն «զի թաղեսցի ընդ նմա.» յայտնի դիտաւորութիւն՝ Բարսղի ճոխութեամբ հաստատելու զեղծում մ'ընդդէմ հրամանի Հիպպոյի (393էն) եւ Տրուլլեան ժողովոյ 692էն (կան. ԿԳ.) ննջեցելոց Ս. Հաղորդութիւն տալը արգիլելով։ Երկրորդն ալ նման կէտ մըն է, այն թէ երրորդ մասն դրաւ Ս. Բարսեղ «յոսկեղէն աղաւնիս.» Աւելի որոշ կ'ըսուի քիչ մ'եաքն՝ «Եւ կոչեալ ոսկերիչն ոսկեգործ՝ հրամայեաց առնել նմա աղաւնի յոսկւոյ սրբոյ. եւ յայնմ եդեալ զմասնն՝ կախեաց ի վերայ սրբոյ սեղանոյն՝ ըստ նմանութեան այնմ աղաւնոյն որ երեւեցաւ նմա ի Յորդանան ի մկրտութեանն Տեառն։» Նպատակաւորութիւն (tendance) կայ յայտնապէս այս խօսքերուն, ինչպէս նաեւ նոյն «աղաւնոյ» մասին Սուտ-Ամփիղոքիոսի պատմած ուրիշ զրոյցներուն մէջ։ Բարսղի ճոխութեամբ եւ զրուցախառն հրաշքներով կը ջանացուի «աղաւնոյ» սովորութիւնը հաստատել. յայտնի բան է։ Բայց ե՞րբ պէտք եղած է այս փորձն ընելու։ Probst սա պատասխանը կու տայ, 518էն էր որ Անտիոքայ Սեւերոս եպիսկոպոսն իւր կղերէն կ'ամբաստանուէր բոլոր արծաթեղէն եւ ոսկեղէն «աղաւնիքն» գրաւելուն համար. ըսելով որ պէտք չէ այնպէս պահել Սրբութիւնն՝ վասն զի եւ ոչ զՍ. Հոգին պէտք է ներկայացընել աղաւնոյ կերպարանօք։ Սուտ-Ամփիղոքիոս ըստ այսմ Սեւերի այս կարծեաց դէմ հինը պաշտպանել կ'ուզէ. ուստի Բարսղի վարքն իբր Զ դարուն գրուած է։ — Այս ամէնը լաւ. բայց մեզի Հայոցս համար այս կէտը կրնայ նշանակութիւն ունենալ. Ինչպէս կ'ըլլայ որ Բիւզանդ գիտէ արդէն «աղաւնոյ» զրոյցը Բարսղի պատարագելուն, եթէ պահենք Բիւզանդայ ամէնէն ուշ Ե դարու կէսերը գրուած ըլլալու կարծիքը. կէտ մը՝ որուն վրայ հոս մեր նպատակէն դուրս է խօսիլ. բայց ապահով ենք որ Բիւզանդայ աղբերաց (որոնց մէկն է Սուտն-Ամփիղոքիոս) քննութիւնը շատ բան տարբեր պիտի ցուցընէ։

*եկն յեկեղեցին, եւ սկսանէր գրել ի քարտիսի այսպէս. Լից զբերան իմ գոհութեամբ, որպէս զի օրհնեցից զփառս քո:* **Տէր Աստուած մեր՝ որ ստացար զմեզ եւ ածեր ի կենդանութիւնս յայս. եւ զայլ աղօթսն մինչեւ պատարագին:** *Եւ զկնի կատարման աղօթիցն՝ վերացուցանէր զհացն համբարձմամբ ասելով.*[1] **Սրբութիւն՝ սրբոց, եւ ժողովուրդն ասէին. Միայն սուրբ, միայն Տէր, միայն Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հօր ամէն:** *Բաժանէր զհացն յերիս մասունս. զմինն հաղորդեցաւ ահիւ մեծաւ, իսկ զմիւսն պահեաց* **որ թաղեսցի ընդ նմա,** *եւ զերրորդն եդ յոսկեղէն աղաւնի եւ կախեաց ի սուրբ խորանին" եւն:* Ահա երրորդ կոչում մը՝ գոնէ Թ դարէն յառաջ, բայց արդէն բիւզանդեան եղանակաւորմամբ Պատարագէ մը: "Տէր Աստուած մեր որ ստացար զմեզ" ճիշդ սկզբնաւորութիւն է Բարսղի բուն Պատարագամատոյցին. բայց եթէ իրաւունք ունի լատինականը կցելու նաեւ "Նայեաց Տէր" աղօթքն "Սրբութիւն՝ սրբոց" խօսքէն յառաջ, միայն Բիւզանդեանէն կրնայ առնուած ըլլալ կոչումս, վասն զի այս Ոսկեբերանի Պատարագէ առնուած աղօթքն՝ զոր ունի նաեւ Բարբերինեան օրինակն՝ թէեւ համառօտ ձեւով, կայ միայն բիւզանդականին ինչպէս նաեւ հայերէն Նոր Թարգմանութեան մէջ. հինը չունի: Նոյնպէս է ճիշդ "Միայն սուրբ, միայն Տէր" աղօթքն Ոսկեբերանի Պատարագէն. զոր ոչ միայն հին հայն, այլ եւ ոչ Բարբերինեանն ունին, ընդհակառակն կայ սովորական բիւզանդականին եւ հայերէն Նոր Թարգմանութեան եւ նաեւ Իսիդորի Պիւրոմալը սարկաւագին քով:

Հնոյն եւ Նորոյն ուղղութեան մասին այսչափը բաւական կը համարինք: Երկուքն ալ իրենց արժէքն ունին այլեւայլ չափով. հինն՝ իբրեւ մի միակ ներկայացուցիչ Բարսղի բուն գործքին, Նորն անոր փոփոխեալ բնագրին՝ թէեւ ոչ մի միակ: Վասն զի որչափ ալ հայն մանրամասնութեանց մէջ շատ շեղի բիւզանդեան յունարէնէն եւ անկախ ձեռագիր մը ներկայացընէ, յընդհանուրն ծայրէ ծայր նոյն է անոր հետ: Հոս պէտք չկայ այս կէտն աւելի ընդարձակ պարզելու, քանի որ բնագրին ներքեւ բազմաթիւ ծանօթութիւններով ամէն շեղում մի առ մի նշանակած ենք: Կը մնայ միայն Նոր Թարգմանութեան մասին կարեւոր մէկ երկու խնդիրները լուծել, որչափ կարելի է ձեռքերնիս եղած սակաւաթիւ միջոցներով:

Ե՞րբ եղած է բիւզանդականին հայերէն (Նոր) Թարգմանութիւնը: Ո՛չ Թարգմանիչէն յիշատակարան մը եւ ոչ ուրիշ որոշ թուական ցուցընող յիշատակութիւն մը ծանօթ է մեզի: Սակայն եւ այնպէս՝ Թ—Ժ դարերէն ուշ չի կրնար ըլլալ ստուգիւ: Արդէն Միւնհէնի օրինակին 1289ին գրուած գաղափարը՝ ինչպէս նաեւ Լիոնեան օրինակն՝ ունին Նոր Թարգմանութիւնն ալ՝ բաւական աղաւաղ եւ քանի մը յաւելուածներով մեր սովորական պատարագէն: Այս ժամանակէն շատ յառաջ ուրեմն կար Թարգմանութիւնն եւ փոփոխութիւն ալ կրած: Լամբրոնացի՝ երբ ԺԲ դարուն կը գրէր իւր գեղեցիկ գործքը "Խորհրդ-

---

[1] Աննշան կէտ մը չէ՝ որ հայը չունի հոս Ուրսոսի հետ "Ոսկեբերանէն" առնուած սա աղօթքը՝ "Նայեաց Տէր. Յիսուս Քրիստոս Աստուած մեր ի սուրբ բնակութենէդ քումմէ եւ յաթոռոյ փառաց թագաւորութեանդ քո" եւն: Տես վարը՝ Էջ. 186: Հնագոյն հայն ալ չունի. կարելի է ըսել այամ որ Սահակ-Ամփիլաքեան առեն (Զ դարուն) տակաւին մուծուած չէր Բարսղի պատարագին մէջ:

գանձութիւնք ի կարգս եկեղեցւոյ„ որ գործքն 1187ի գերի ընկաւ Թուրքաց ձեռքն եւ 1192ին կրկին գնուեցաւ Հեղինակէն, արդէն ծանօթ կ'ենթադրէ Բարսղի պատարագին այս նոր թարգմանութիւնը: Նոյն գրութեան “Բաղդատութիւն առ միմեանս սահմանադրութեանց եկեղեցւոյ Քրիստոսի„ գլուխն վերջերն երկար կը խօսի պատարագամատուցաց եւ ի մասնաւորի “Ոսկեբերանի„ պատարագին վրայ, զոր Լամբրոնացի արդէն իւր բիւզանդեան կամ յեղափոխեալ ձեւին մէջ միայն կը ճանչնայ, եւ ըստ այսմ՝ ճիշդ Պրոկղի տուած տեղեկութեան հակառակ՝ կը ստիպուի հաստատել որ Ոսկեբերան “կատարելութեան պատարագին աւելորդն արար քան զսովորութիւն առաջնոցն„: Հոն կը յիշէ նաեւ Բարսղինն ու Աթանասինը (վերջնոյս մասին տես յետոյ) գրելով՝ “Այլ եւս Բարսղին է պատարագ եւ եւս Աթանասին՝ նախ զԽորհրդականն առեն մինչեւ ի վերաբերումն ընծայիցն, եւ այլս զնոցայն:„ Այս տեղեկութիւնս կը համաձայնի կէս առ կէս Բարսղի յաջորդ թարգմանութեան եւ “Աթանասի„ պատարագին սկիզբը գտնուած խորատագրոյն: Լամբրոնացւոյ տեսածն ունէր ըստ այսմ արդէն “Նախերգանն„ եւ կամ նոյն էր յաջորդ բնագրին հետ: Լամբրոնացւոյ առեն արդէն շատոնց թարգմանուած էր Բարսեղ, իսկ “Ոսկեբերանին„ “առաւելութիւնն„ գոնէ մասամբ ինքն իսկ լրացուցած կ'երեւայ, եթէ սխալ չենք հասկընար իւր խօսքը:[2] Նշանակութենէ զուրկ չէ այս մասին նաեւ Լամբրոնացւոյ բերանը դրուած վիճաբանութիւնն ‘յորժամ չոգաւ դեսպանութեամբ ի թագաւորէն Հայոց Լեւոնէ ի Կ. Պօլիս„ գործք մ'որ ոչ շատ ժամանակ ետքը գրուած ըլլալու է: Յայտնապէս կ'ըսուի հոն որ “Յակոբայ„ պատարագն ծանօթ է Հայոց, բայց ոչ իբրեւ վաւերական ընդունելի:

Մոռնալու չենք նաեւ այն կէտն որ ԺԱ դարու սկիզբն Գրիգոր Մագիստրոս առ կաթուղիկոսն Ասորւոց գրած թղթին մէջ Յակոբայ եւ Կիւրղի ընթերցուածոյն հետ կը յիշէ նաեւ Բարսղի պատարագն:[4] Աւելի կանխագոյն գրու-

---

[1] Տպ. Վենետ. 1847 էջ 221:

[2] Անդ, էջ 226. “Եւ զԽորհրդատետրն առ մեզ աւանդեալ ի սրբոյն Յովհաննու Ոսկեբերանէ սահմանադրութեանց աղաչեմ ընդունել սիրով. եւ եթէ այլ ոք քան զնա այլ յետ նր գեղեցկացուցանէ զնոյնս՝ եւ զնորայն ի փառս Քրիստոսի„ եւն:

[3] Տես Ձեռ. մեր մատենադարանի Թ. 78, թղ. 54ա—55ա. “Ասէ պատրիարգն եթէ վասն ջրոյն որ ի սուրբ խորհուրդն՝ վկայէ սուրբն Յակոբ յիւր Պատարագն, որ առաջին եպիսկոպոս էր յԵրուսաղէմ, եւ Գրիգոր Նիւսացի եւ Բարսեղ զայս ինչ եւ զայն: (Պատ.) Ասէ սուրբն Ներսէս ...Այլ զՍ. Յակոբայ Պատարագն ոչ գիտեմք այնպիս եւ ոչ ընդունիմք. զի եւ Եւսեբի չյիշատակէ. եւ նա թէ յեկեղեցի Պատարագ ունէր՝ զնի իւր թղթերոյն էր եդեալ„ եւն: Բարսղի Պատարագին բաժակի օրհնագործութեան մասին սա վիճաբանութիւնը կը գրուի քիչ մ'ետքը. “Ասէ Պատրիարգն. Գիտ զայն տեղի՝ յորում գրեալ է թէ Նոյնպէս եւ զբաժակն օրհնեաց, խառնեաց եւ տաւ. Արբէք: Ասէ սուրբն Ներսէս եթէ սուտ խառնեաց ոչ գայ, այլ միայն թէ օրհնեաց: Ասէ Պատրիարգն. խօսելի է, այլ այսպէս է բանդ թէ՝ Օրհնեաց, խառնեաց: Ասէ սուրբն Ներսէս եթէ Բարսեղ յաւետարանէն իջէ առեալ՝ անդ ո՛րք է գրեալ թէ խառնեաց. այլ եթէ Բարսեղ կամ դուք յաւետարանին բանն յաւելիք՝ մեզ չէ ընդունելի„ եւն: Մեր փոյթը չէ հոս որ այս վիճաբանութեան յօրինողը փոքրիկ խաբէութիւն մ'ուզած է ընել Լամբրոնացւոյ բերանը դնելով այն խօսքը թէ Բարսղի պատարագին մէջ չկայ “խառնեաց.„ ոչ միայն յունական բնագիրքն, այլ նաեւ հայերէն նոր թարգմանութեան երկու ձեռագիրն ալ ունին անփոփոխ: Այլ բաւէ մեզի այժմ որ Լամբրոնացւոյ ժամանակ եւ կամ գոնէ քիչ մ'ետքն, երբ այս վիճաբանութիւնն յօրինուած է, հանրածանօթ էր Բարսղի Պատարագը նոր թարգմանութեամբն:

[4] “Եւ այժմ ասացից՝ այս է խնդիր մեր. եթէ հնար է խորհրդոյն անապականութեան ... եւ զօրհնութեան բաժակ անչափ եւ անխառն արեան եւ միացուցիչ կցորդաբար եւ նորոյ ուխտին է կատակ, եթէ ուստի գտեալ զդա ի Բար-

թեանց մէջ եւ նոյն իսկ Հայ պատմագրաց քով՝ յաճախ են Բարսղի գրոց յիշատակութիւնք եւ կոչմունք, մանաւանդ անոր Կրօնաւորաց սահմանադրութիւնն. բայց Պատարագը չենք գտներ յիշատակուած՝ գոնէ որչափ կրցանք փնտռել։ Դժուարաւ ալ աւելի հին է՝ ըստ մեր կարծեաց՝ Նոր Թարգմանութիւնս քան Ժ կամ Թերեւս Թ դարը, եւ արդէն իւր այժմու դրից մէջ՝ տեղ տեղ աւելի զարգացած կը գտնենք Նոր Թարգմանութիւնը (համաձայն սովորական բիւզանդականին) քան Թ դարու գրուած Բարբերինեանը, թէեւ անկարելի չէ որ Թարգմանութիւնը քիչ մ՚աւելի կանուխ ըլլայ քան նոյն ձեռագիրն. վասն զի յայտնի է որ յոյն ձեռագրաց պարունակութիւնը շատ պէսպիսութեամբ ըլլալու էր մանաւանդ այն ժամանակները քան յետոյ, երբ ամէն պատարագներն աւելի հաստատուն ձեւակերպութիւն մ՚առին։ Աւելի դժուար է ի հարկէ որոշել թէ ո՛ր ժամանակէն յառաջ չէր կրնար Թարգմանուած ըլլալ։ Բիւզանդեանն արդէն կերպաւորուած կտանք 518էն քիչ մ՚ետքն Ամփիղոքիոսի քով, աւելի եւս 787ին Նիկիոյ երկրորդ ժողովոյն Գործոց կոչման մէջ։ Բայց մէկ երկու — կը խոստովանինք՝ տկար — կռուաններ ալ չեն պակսիր։ Նախերգանին սկիզբն բաւական երկար քաղուածք մը կայ Դիոնեսիոսի Արիոպագացւոյն գրութիւններէն, ի մասնաւորի "Յաղագս եկեղեցական նուիրապետութեան" ճառէն։ Քաղուածքը յատուկ է հայոյն. եւ ո՛չ մէկ բնագրի մէջ կ՚երեւայ։ Եթէ ընդունինք որ Թարգմանչէն է այս յաւելուածը, այն ժամանակ պէտք է որ Թարգմանութիւնը շատ ուշ ըլլայ քան Դաւթի Ստեփանոսի ձեռօք Դիոնեսիոսի Թարգմանութիւնն՝ որ եղած է ըստ յիշատակարանին իբր 713ին։ Թէ այս Թուականէն շատ ետքն է Բարսղի Նոր Թարգմանութիւնը՝ չենք տարակուսիր. բայց ո՞վ կրնայ երաշխաւորել այն յաւելուածին՝ Թարգմանչէն ըլլալը եւ ոչ յետամուտ որեւէ դպրէ մը։ Դժուար է նոյնպէս իբրեւ ապացոյց բերել այն որ Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոսն իւր Պատարագի (950ին գրած) Թանկագին մեկնութեան մէջ[1] չի յիշեր այս պատարագն, եւ ասկէ հետեւցնել որ նոյն Թուականէն ետքն ըլլալու է ասոր Թարգմանութիւնը։ Խոսրով իւր ժամանակին ընդհանուր գործածութեան մէջ եղող միակ պատարագը մեկնելու փոյթ ունեցած է, եւ յանուանէ ուրիշ որեւէ պատարագ չի յիշեր, նաեւ այնպիսիներ որ իրմէ շատ յառաջ կային։[2] "Խոսրովայ Պատարագին" վրայ յետոյ կը խօսուի իւրն տեղը։ Աւելի ծանրակշիռ կը համարինք Գրիգորի որդւոյ Աբասու լռութիւնը։ Ասոր

---

շամոթէ խմանամք եւ այլ ոչ ուսեալք, եւ զասնիցս միաբանութիւն զսուրբ տեղեացն ընկալաք երանելւոյն Յովսեփայ ի Սկեւռացի, եւ հետեւեալ [illegible] (= Պատարագ)՝ զոր յառաջնում աւուրն Տէրն սկսաւ գործել ի սուէ մինչեւ ցարդ, զոր ոչ է ի ծածուկ ի քումդ Սրբութեանդ Գիրք Սրբոյն Բարսղի, եւն։ Տես Ցուցակ մեր մատենադարանին Թ. 27, § 1 (էջ 142)։

[1] "Խոսրովու Անձեւացեաց եպիսկոպոսի Մեկնութիւն Աղօթից," Վենետ. 1869, 8°, էջք 67։ Նոյնը լատիներէն Թարգմանուած՝ Chosroae Magni episcopi... Explicatio Precum Missae, e lingua Armeniaca in Latinam versa per Dr. P. Vetter. Friburgi 1880, 8° pp. 64.

[2] Խոսրովայ նման ուրիշ եւ ոչ մէկ Պատարագ կը յիշէ յանուանէ իւր Մեկնութեան մէջ նաեւ Յովհ. Արճիշեցի (տես Ձեռ. մեր Մատ. Թ. 174 եւն։) — Բարսղի Վարքերու մէջ (ի Յայսմաւուրս) յաճախ կը յիշուին իւր "Աղօթք." այսպէս Թ. 10 մեր Մատ. "արար սուրբն Բարսեղ զՄեկնութիւն աստուածային գրոց եւ այլ ճառս բազումս ներբողենից եւ Աղօթից." (տես Ցուցակ, էջ 62։) Բայց այն Վարքերուն հիմն է Սուտ-Ամփիղոքիոսի գործը. ասկէ զատ քիչ չեն Մաշտոցներու եւ Աղօթագրոց մէջ Բարսղի անուամբ աղօթքներ, սակայն թէ ոչ՝ մեր խնդրէն դուրս է։ Այս կարգի խորագիրք շատ քիչ արժանահաւատ են սովորաբար։

"Գիրք Պատճառաց" գործը բովանդակ հայ մատենագրութեան մէջ եզական երեւոյթ մըն է, եւ մատենախօսութիւն մ'իր ժամանակին սեռութեանց համաձայն՝ Ս. Գրոց եւ եկեղեցւոյ գլխաւոր վարդապետաց գրութեանց վրայ, մեծաւ մասամբ որչափ ծանօթ էին հեղինակին հայերէն թարգմանութեամբ. գործք մը՝ որ իր այժմու կերպարանաց մէջ գոնէ 880էն ետքը հեղինակուած ըլլալու է, քանի որ Յովհաննու բժշկի նոյն տարին (կամ 869ին, ՅԺԸ եւ ՅԻԹ ըստ այլեւայլ յիշատակարանաց) թարգմանած Դիոնեսիոսի վարքը կը պարունակէ։[1] Բարսղի նուիրուած են այս գործքին մէջ երեք գիրք (Գիրք Է—Թ), ուր մի առ մի կը խօսուի նոյն հօր 32 ճառերուն, յետոյ "Հայցողաց" գրոց եւ վերջապէս Վեցօրէին վրայ։ Բառ մ'ալ չենք գտներ հոս ալ Բարսղի Պարապրագին մասին։ Թէպէտեւ հեղինակին գոնէ ծանօթ ըլլալու էր Բարսղի՝ պատարագ մը գրած ըլլալը, քանի որ կը գործածէ Սոյն-Ամփիղոքիոսի գրութիւնը։ Հայերէն թարգմանութիւն չըլլալով կամ իրեն ծանօթ չըլլալով՝ չի յիշեր զայն։ Կը կրկնենք՝ այսպիսի հետեւութիւն մը հանել բնական կ'երեւայ. բայց ընդհանրապէս այս "ի լռութենէ ցուցմանց" վրայ շատ մեծ ծանրակշռութիւն դժուար է դնել։ Կ'ընդունինք սակայն սիրով որ 869էն յառաջ հազիւ թէ թարգմանուած ըլլայ աս բիւզանդեան նուիրագործութիւնն։

Թարգմանութեան ներքին արժէքին գալով՝ կրնանք գոհ ըլլալ։ Ջուր է ի հարկէ՝ փնտռել հնագոյն թարգմանութեան լեզուի մաքրութիւնն, վայելչութիւնն ու կորովն. բայց նորն ալ խոտելի չէ, ընդհանրապէս բաւական կոկ ու յաջող է՝ թերեւս նիւթին իսկ բերմամբ. մեծաւ մասամբ ազատ յոյն յունաբանութիւններէն։ Բոլորովին ազատ ալ չէ, եւ չեն պակսիր յունարէնին կէտ առ կէտ նմանութեամբ յօրինուած բառեր եւ ասութիւններ։ Ասոնք եւ նմանները կրնան սեռնուիլ յաջորդ հրատարակութեան ծանօթութեանց մէջ։ Օրինակի համար միայն կը յիշենք հոս՝ "Վերանայեաց" = ἐπίβληψον (ծան. 75), "վերածնութիւն" եւն, բայց ամէնէն անյարմար "Վերաբերումն" իբրեւ Պարապրագ (= յոյն ἀναφορά, ճիշդ "վերաբերութիւն" ծան. 84։) Բնագրին այս շատ նիւթականօրէն կապուիլն աւիթ տուած է տեղ տեղ նաեւ անյարմար եւ նաեւ անճիշդ դարձուածոց եւ ասութեանց, ի միջի այլոց՝ "Փրկեա յընթացմանէ այլազգեաց" (ἀπὸ... ἐπιδρομῆς, յարշաւանաց, ի հինէ, ծան. 162.) — "Զորս արդարացուցեր թագաւորել" (= οὓς ἐδικαίωσας βασιλεύειν, իբր՝ արժանի արարեր, ծան. 147.) — "Այցեաց առաջնորդ լեր" (փխ. այցելու, խնամակալ, տեսուչ լեր = πρόσηθι, ծան. 152.) — "Ցառաջապատմեալ մեղ ըղհանդերձեալ լինել փրկութիւն" եւ նմաններ։ Կայ ի հարկէ շատ բան ալ, որ ձեռագրաց աղաւաղութեամբ անճիշդ եւ անյարմար ընթերցուածներ եղած են, ինչպէս աս խօսքը (ծան. 152) "Ուղեկցեա (զմոլորեալս) ընդ ... եկեղեցւոյ." ուր պէտք էր "զուգակցեա" (σύναψον) կարդալ։ Բայց այս "ուղեկցեա", աղաւաղ ընթերցումն է պարզապէս՝ որուն աւիթ տուած է քիչ մ'եաքն եկող աս նախադասութիւնն՝ "Ուղեգնացացն ճանապարհորդակցեա" (— այս ալ շատ լաւ թարգմանութիւն մը չէ, ճիշդ յունարէնին նման կաղմուած ըլլալով = συνόδευσον, լեր ուղեկից։) Շատ հին է աղաւաղութիւնն. վասն զի թէ Մոնաքոնի եւ թէ Լիոնի ձեռագիրք հաւասարապէս ունին նոյն անճշդութիւնը։ Այսպիսի-

[1] "Գրոց Պատճառաց" մասին տես ընդարձակ՝ Ցուցակ Զագր. մատենադարանին (Թ. 47), էջ 213—233, ի մասնաւորի էջ 224։ Կան նաեւ կէտեր՝ որ աւելի ուշ ժամանակի մը կը վերաբերին։

նելը չհաշուելով՝ մնացածն ընդհանրապէս գոհացուցիչ է։ Բայց աստ՝ թարգմանիչն յայտնապէս առջեւն ունի Բարսղեանին հին թարգմանութիւնն, կ'ենթադրուի Գր. Լուսաւորչի անուամբ։ Կան տեղեր ուր երկուքն կը ձայնակցին իրարու՝ նաեւ բառ առ բառ, ուր բոլոր յոյն բնագիրները կը շեղին։[1]

Այսչափ բաւական կը համարինք նոր թարգմանութեան մասին։ Թէ ինչ յարաբերութիւն ունի հայն միւս բնագրաց հետ՝ կը ցուցնէ վերջիններուս համեմատութիւնն ծանօթութեանց մէջ, ուստի հոս չենք կրկներ։ Ընդհանրապէս սերտ կապ ունի հայն Բարբերինեան օրինակին հետ. (տես ծան. 27, 72, 73, 76—7, 82—3, 96, 104, 169, 173 եւն.) բայց նաեւ կը շեղի անկէ՝ երբեմն այնպիսի տեղեր ալ, ուր կ'երաշխաւորուի իւր ընթերցման ճշդութիւնը հին հայերէն թարգմանութեան վկայութեամբ. (տես ծան. 174, 180 եւն։) Բազմաթիւ բիւզանդեան յաւելուածք բնական է որ կը պակսին հոս. (տես ի միջի այլոց՝ ծան. 136, 140 եւն.) բայց երբեմն նաեւ տեղեր կան թերի՝ որոնց պատճառն ձեռագրաց անճշդութիւնն ըլլալու է. (համմտ. ծան. 79 եւն, զոր ունի նաեւ Բարբ.)։ Երկու մեծ կտոր միայն նոր հայերէնն ունի, մին՝ Սրբասացութեան տաղ մը (տես Ը, ծան. 55), միւսն աւելորդ Աղօթք մը, (տես Գ. 1, ծան. 89.) երկուքն ալ կարծենք յետսամուտ։ Այս ամէնէն կը տեսնուի որ հայերէն թարգմանութիւնն բոլորովին անկախ յոյն բնագիր մ'առջեւն ունեցած է՝ Բարբերինեան օրինակին ցեղէն։

[1] Համմտ. վարը ծան. 107, 116, 120 եւ այլուր։ Կ'արժէ երկու թարգմանութիւններն՝ ուր միեւնոյն բնագիրն ունին՝ իրարու հետ համեմատել։ Ի՞նչ մեծ տարբերութիւն միեւնոյն գաղափարը բացատրելու՝ հինն առոյգ ու վայելուչ, եւ յետոյ նոյնը՝ արդէն անկեալ եւ կիսով մեռեալ լեզուի միջոցաւ։ Գաղափարաց որոշ բացայայտութիւն եւ յունարէնին ճիշդ նմանութիւն աւելի նոր թարգմանութեան մէջ կը տեսնուի, որ բնական երեւոյթ մըն է։

## Բ.

### ԲՆԱԳԻՐ ԲԱՐՍՂԻ ՊԱՏԱՐԱԳԻՆ ՆՈՐԱԳՈՅՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

*ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՊԱՏԱՐԱԳ ԱՍԱՑԵԱԼ ՍՈՒՐԲ ՀԱՒՐՆ ՄԵՐՈՅ ԲԱՐՍՂԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻՆ ԿԵՍԱՐՈՒ*[1]

## Ա. ՆԱԽԵՐԳԱՆ

### ՅԱՌԱՋԱԴՐՈՒԹԻՒՆ[2]

Ը. *Ամենայն որ ինչ զգեստաւորելոյ է խորհրդածութիւն, գրեալ է յառաջինան բաւականապէս*[3]*: Իսկ յորժամ զգենու ըստ աւրինին, առեալ զհացն դնէ ի մաղզմայն անելով.* Յիշատակ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Եւ

---

Հրատարակութիւնս եղած է ճշգիւ ըստ Մոնաքոնեան օրինակին (M), որուն հետ համեմատուած է Լիոնինը (L)։ Դժբախտաբար վերջինիս ընթերցուածոց տարբերութիւնք լիակատար չեն բոլորովին՝ Յարգ. հեղինակը տեղ տեղ համառօտութեամբ միայն օրինակած ըլլալով զայն։ ||[1] M "հայրն մերում։" ||[2] L "եպիսկոպոսապետին." M "եպիսկոպոսապետի։" ||[4] Վերնագիրքս ("Յառաջադրութիւն" եւն եւն) մեզմէ են, ձեռագրաց մէջ չկան։ ||[5] L "որ ինչ զգեստաւորելոյն է...։" ||[6] L այսպէս ունի կարմրագիրս. "...բաւականապէս։ Իսկ քահանայն առեալ զհացն դնէ ի մաղ։(— հոս եւ այլուր ճշգիւ կը պահենք ձեռագրաց համառօտութիւնքն —) Ի յիշատակ Տեառն...։"

[1] Յունարէն բնագիրը վերը գրուած ըլլալով լիովին՝ հոս միայն կարեւոր տարբերութիւնները նշանակել պէտք է։ Խորագիրս աս ձեւով է յունարէնին մէջ՝ "Աստուածային պատարագ մեծին Բարսղի։" Յոյնը խորագրին կից ծանօթութիւն մ'ունի թէ երբ կը մատուցուի Բարսղի պատարագը։ Բոլորովին կորսուած չէ հայոյն մէջ ալ՝ թէպէտ քիչ շատ այլափոխ կերպարանքով մեր առջեւ ելլէ. եւ է հետեւեալը. (տես Հ. Գր. Գալէմքեարեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Միւնխէն, էջ 17.) "Եթէ յոր ժամու կատարի սրբոյն Բարսղէ պատարագն եւ կամ սրբոյն Յովհաննու, այս է։ Կիւրակէ որ աւր աւագ բարեկենդանին կատարէն զսուրբ Բասլի պատարագն, եւ մինչեւ ի Ծառազարդարն յամենայն կիւրակէի։ Իսկ Ծառազարդարին կիւրակէ սուրբ Յովհաննուն կատարի։ (Եւ յամենայն շաբաթ աւր աղուհացիցն սուրբ Յովհաննուն կատարի։) Իսկ աւագ հինգշաբաթ աւր եւ աւագ շաբաթ աւր Բարսղին. (Իսկ Ջատկին կիւրակէն սուրբ Յովհաննուն։ Աւետեաց Աստուածածնին տաւն՝ ինչ աւր գայ՝ սուրբ Յովհաննուն կատարի. բայց թէ ի կիւրակէ գայ՝ սուրբ Բասլին։) Ծնունդն Քրիստոսի յոր ինչ աւր գայ՝ սուրբ Բասլին կատարի. (բայց թէ ի շաբաթ գայ կամ ի կիւրակէ՝ սուրբ Յովհաննուն։) Իսկ Մկրտութեան ճրագալուցին՝ սուրբ Բասլին, եւ յիւր տաւնն՝ զնոյն։ (Յաւագ շաբաթին եւ Ջատկին առաջի շաբաթին զորոց տաւնոն թուեա եւ յաղուհացիցն յերկրորդ եւ յերրորդ շաբաթն կատարեա։ Բայց զաւետիս Աստուածածնին յոր ինչ աւր գայ՝ յայն տաւնեա ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։") — Փակագծի մէջ եղածները չունին համապատասխանող մասեր յունարէնին մէջ, գոնէ Danielի հրատարակութենէն չափելով, որուն համեմատ են յաջորդ համեմատութիւններն ալ։

[2] Այս եւ յաջորդ խորագիրները մեզմէ են։ "Յառաջադրութիւն" գրինք փխ. յունականին εὐχὴ τῆς προθέσεως.

Ա. [3] Իրաւ է. այս առաջին մասերը Յովհաննու Ոսկեբերանի անուամբ ծանօթ պատարագէն կ'առնուին սովորաբար. հոս ակզբան մասերն եւ աղօթքն "զգեստաւորելոյ" դուրս թողուած են։ Այժմու "Յիշատակ Տեառն մերոյ" եւն քա-

*առեալ զինի արկանէ խաչանիշ ի սկիհն ասելով.* **Յաղագս յիշատակի տնօրէնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։** *Եւ քարոզէ սարկաւագն.* [*Սար.*] **Նա եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։** *Դպ.* **Տէր ողորմեա։**

*Քահ.*[4] **Տէր Աստուած մեր որ զենար գառն անբիծ յաղագս աշխարհի կենաց, նայեաց ի մեզ եւ ի հացս եւ ի բաժակս յայս, եւ արա զսա անարատ մարմին եւ պատուական արիւն քեզ ի հաղորդութիւն հոգւոց եւ մարմնոց մերոց.** — *ի ձայն.* — **Զի սուրբ եւ փառաւորեալ է ամենապատիւ եւ մեծավայելուչ անուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ։**

[5] *Եւ ապա խաչակնքէ ի վերայ ընծայիցն եւ ծածկէ դաստառակաւ ասելով.* **Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ, զգեցաւ զաւր.։** *Եւ տեառնագրէ ասելով.* **Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ, եւ զաւրութիւն բարձրելոյն հովանիասցի ի վերայ քո։**

*Եւ արկանէ խունկ ասելով զաղաւթս զայս:* **Տէր Աստուած որ ընդունեցար զԱբելի զընծայսն, զՆոյի եւ զԱբրահամու զոհսն, զԱհարոնի եւ զԶաքարիայի զխունկսն, ընկալ եւ ի ձեռաց մերոց մեղաւորաց զխունկս զայս ի**

---

‖8 L պարզապէս "Եւ առեալ գինի արկանէ ի բաժակն եւ ջուր ասելով. Յաղագս յիշատակի տնօրէնութեան...:" ‖9 L չունի "եւ քարոզէ սարկաւագն" խորագիրն, այլ միայն "Սրկ." M վերջինն ալ ունի, զոր դրինք փակագծի մէջ։ Այս կրկնութեան պատճառն այն է որ M կարմրագիրքն առանձին տողով կը դնէ եւ ապա յաջորդին սկիզբը կը կրկնէ՝ պայծառութեան համար։ ‖13 L "ի բաժակս յայս †:" ‖14 L չունի "մերոց" եւ "ի ձայն", այլ յաջորդն անմիջապէս կը կցէ։ — L "մեծավայելուչ:" ‖15 L "Հօր ...եւ Հոգւոյ սրբոյ այժմ եւ:" ‖16 L չունի "ապա" եւ քիչ մ'ետքն "դաստառակաւ" բառերը։ ‖17 L ունի "...զգեցաւ. (առանց յաջորդ խորագրին, կցելով՝) Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ եւ զօրութիւն...:" — M երկու անգամն ալ "զօգեցաւ" գրած է հոս։ ‖20 L չունի "զաղաւթս զայս:" — Նաեւ L "որ ընդունեցար," ուստի թերեւս թարգմանչին գրչէն է կենդանի լեզուի այս ձեւը։ — Դժբախտաբար ծանօթ չէ ինծի L-ի միացեալ ընթերցումն այս աղօթքին, ինչպէս նաեւ Ս. Դիոնեսիոսի գրքէն եղած կոչման, որ անշուշտ չի պակսիր նաեւ ի L։

դրուած է հինգերորդ հատուածէն՝ (Danielի քով էջ 331։) Յունականը շատ կ'առատանայ, իսկ հոս հայցին մէջ՝ քանի մը քաղուած կտորներ միայն ամփոփուած են։

[4] Այս ամբողջ աղօթքը չկայ բիւզանդեան Բարսղի պատարագին մէջ այստեղ, ուր յոյնը կը սահմանէ ըսել (Ոսկեբերանի պատարագին, Daniel էջ 338) հետեւեալ աղօթքն, որ մեր ոսկեբերանեան պատարագին մէջ ալ կայ. "Աստուած Աստուած մեր որ զերկնաւոր հացդ, զՏէրդ մեր Յիսուս Քրիստոս, զկերակուրդ ամենայն աշխարհի" եւն. (տես Խորհրդատետր, Վիեննա 1858, էջ 26։)

[5] Այս ամէնը մինչեւ "Աւրհնեալ թագաւորութիւն" չկայ Բիւզանդեան Բարսղի պատարագին մէջ։ Յոյնը վերոյիշեալ աղօթքէն ետքը միայն քարոզութիւն մ'ունի Սարկաւագին. "Պռոս-խոմէն. Աւրհնեա Տէր։ Քահանայն ի յոյն։ Աւրհնեալ թագաւորութիւն" եւն։ Խնկարկութեան աղօթքը ("Տէր Աստուած որ ընդունեցար զԱբելի ընծայսն" եւն.) կը տարբերի Ոսկեբերանի խնկարկութեան աղօթքէն՝ "Խունկ մատուցանեմ առաջի քո" եւն. (Խորհրդատետր, Վիեննա, 1858, էջ 26, Daniel, p. 336։) Բուն քաղուածք մըն է Բարսղի Պատարագին առաջին աղօթքէն (տես վերը՝ էջ 123։) Խօսք չկայ՝ մանրագիր կտորը՝ Դիոնեսիոսի աւանդածներուն յիշատակութիւնն՝ թարգմանչէն ըլլալու չէ. յոյնն ալ չունի այս միջանկեալ խորհրդածութիւնքն։

*Թողութիւն մեղաց մերոց եւ ժողովրդեան քում. — Ի ձայն — զի աւր-հնեալ եւ փառաւորեալ է ամենապատիւ եւ մեծվայելուչ անուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ։*

*Սուրբն Դիոնեսիոս գրեալ է յիւր գիրսն եթէ քահանայապետն յորժամ զգեստաւորի՝ գայ առաջի սրբոյ սեղանոյն եւ աղաւթս կատարէ ի վերայ սեղանոյն։ Եւ ապա առեալ զբուրվառն արկանէ խունկ սուրբ սեղանոյն եւ տաճարին կարգաւ, եւ գայ ելանէ ի բեմն։ Եւ սկսանին զսուրբ կարգն քաղցրաձայնութեամբ եւ յորժամ ընթեռնուն զմարգարէական եւ զառաքելական գիրսն, հրամայէ սարկաւագն ելանել երախայիցն, եւ դիւահարացն եւ ապաշխարողացն ի սուրբ տաճարէն, եւ արժանաւորքն մնան ի ներքս եւ կատարեն զսուրբ խորհուրդն։ Իսկ քահանայն լուանայ զձեռսն եւ կայ առաջի սրբոյ սեղանոյն։ Իսկ իմանալի մտաւք յերկինս երկնից առաջի Աստուծոյ Հաւր, եւ զՔրիստոսի մարդեղութեան խորհուրդն զամենայն յիշեցուցանէ առաջի Աստուծոյ Հաւր իմանալի մտաւք, եւ ի ձեռն նորա մարդեղութեան խորհրդոյն աղաչէ զՀայր հաշտել ընդ արարածս։ Եւ զհացս եւ զգինիս նշանակ ունել իմանալի մտաց, զի մարմնով զսա ճաշակեսցէ եւ իմանալի մտաւք զխորհուրդն Քրիստոսի։ Եւ ոչ է պարտ անբանաբար կալ նմա անդ, այլ պարտ է գիտել թէ ըր առաջի կայ եւ վասն զինչ խորհրդի։*

Սարկաւագն ելանէ ի խորանէն, երկրպագէ երիցս եւ վերածայնէ առ քահանայն[6]. **Աւրհնեա Տէր։** *Քահ.* **Աւրհնեալ** *թագաւորութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյ սրբոյ, այժմ եւ։* Ժողովուրդն. **Ամէն։**

### ԽԱՂԱՂԱԿԱՆՔ ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ[7]

**Բ.** — Սարկաւագն քարոզէ վերածայն ի թիւ: **Եւ եւս** *խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։* Ժողովուրդն. **Տէր ողորմեա։**

---

‖43—4 L պարզապէս. "Սրկ. Օրհնեա Տէր։" — L "Օրհնեալ . . Հօր . . .։" ‖45 L չունի "Ժողովուրդն. Ամէն" խօսքը. M ալ համառօտութեամբ "Ժողո" կը գրէ. Նոյնպէս ուրիշ տեղեր ալ, ուր մի առ մի չենք նշանակեր այս համառօտութիւնը։ ‖47 L լուսանցքին կ'երեւայ ընթեռնլով՝ "Սրկ. Խաղաղութեամբ զՏէր աղ." (= աղաչեսցուք.) Վասն ի վերուստ խաղաղութեան եւ", ուստի չունի "Ժողո-

[6] Այս խրատագիրը չկայ յունին մէջ։ Ասկէ սկսեալ կը զուգընթանայ հայը Բարսղի Բիւզանդեան պատարագին հետ՝ հանդերձ իւր առանձնայատկութեամբն։

Բ. [7] Յոյնը՝ "Խաղաղականք եւ Պատասխանիք (τὰ εἰρηνικὰ καὶ αἱ ἀποκρίσεις) որպէս ի Պորփիրեան Ուսպենսկու։" Ուստի հոս լեռլին չեն կրկնուած խաղաղականք, այլ համառօտուած այսպէս՝ "Սարկաւագն. Խաղաղութեամբ զՏէր աղաչեսցուք։ Վասն ի վերուստ խաղաղութեան։ Վասն խաղաղութեան ամենեցուն։ Վասն սրբոյ տանս այսորիկ։ Վասն արքեպիսկոպոսին։ Վասն սրբոյ բնակարանիս այսորիկ։ Վասն օդոց բարեխառնութեան։ Վասն նաւորդաց, ճանապարհորդաց։ Վասն փրկելոյ զմեզ։ Ընկալ։ Զամենասուրբ։ Զի քեզ վայելէ։" Վերջին երեքն "Ընկալ"էն սկսեալ՝ չկան Goarի հրատարակութեան մէջ, եւ ոչ ալ հայոյն, ինչպէս վերը կը տեսնուի։ Մնացեալները մեր օրինակներն առանց համառօտելու կը հաղորդեն, զորոնք պէտք է համեմատել Ռուսերէնի խաղաղականաց հետ (Daniel. p. 340.) Տարբերութիւնք քիչ շատ կան։

*(Սարկ.)* Վասն ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք։ — Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի եւ հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք։ — Վասն սուրբ տանս այսորիկ շինութեան եւ որոց հաւատով եւ երկիւղիւ մտանեն ի սմա, զՏէր աղաչեսցուք։ — Վասն եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական քահանայութեան եւ որ ի Քրիստոս սարկաւագութեան զՏէր աղաչեսցուք։ — Վասն բարեպաշտ եւ աստուածահաճոյ թագաւորին մերոյ եւ ամենայն պաղատին եւ զինուորեալ մանկանց նորա, զՏէր աղաչեսցուք։ — Վասն մարտակից լինելոյ եւ հնազանդեցուցանելոյ ընդ ոտիւք նորա զամենայն թշնամիս եւ զպատերազմունս, զՏէր աղաչեսցուք։ — Վասն քաղաքիս այսմիկ շինութեան եւ ամենայն քաղաքաց եւ գաւառաց, եւ որոց հաւատով բնակեալ

---

վուրգն՝ Տէր ողորմեա։" ‖49 Այս խաղաղականքը L ունի համառօտիւ, որ կրնայ նախնականն ըլլալ. "Վասն ի վերուստ խաղաղութեան եւ...։ Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի։ Վասն տանս այսմիկ շինութեան։ Վասն եպիսկոպոսապետին...։ Վասն մարտակից լինելոյ եւ հնազանդեցուցանելոյ ընդ ոտիւք նորա զամենայն թշնամիս։ Վասն քաղաքիս այսմ շինութեան։ Վասն բարեխառնութեան օդոց եւ քաղցրաբերութեան։ Վասն ճանապարհորդաց։ Վասն փրկելոյ զմեզ յամենայն նեղութենէ, ի բարկութենէ եւ ի վտանգէ։ Վասն ամենայն անձին քրիստոնէի եւ տան հաւատացելոյ։ Զամենասուրբն Աստուածածինն...։" Վերջինս ծրդագոյն կ'երեւայ քան ի M, որ քահանային աղօթքէն ետքն ունի զայն, տես վարը Ծան.։ — L վերջաւորութիւնքն համառօտութեամբ կը նշանակէ՝ "զՏէր աղա." "զՏէր" կամ նաեւ պարզապէս "զ"[Տէր...] գրելով։ ‖52 Դրինք "այսորիկ." M "տանս այսորիկ." L "տանս այսմիկ։" — Այսպէս "մտանեն ի սմա։" ‖58 M "քաղաքիս այսմիկ շինութեան." L "քաղաքիս այսմ...։" ‖60 L "օդոց։" ‖64–5 L լաւագոյն է "տան հաւատացելոյ"

Մերինին "Եւ եւս խաղաղութեան" ընթերցուածոյն կը համապատասխանէ յունականին մէջ հոն եւ այլուր ἐν εἰρήνῃ ("խաղաղութեամբ.") Յաջորդաց մէջ յոյնն այսպէս ունի՝ "... եւ հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ եւ ամենայն միաբանութեան։" — "Սուրբ տանս այսորիկ (չկայ "շինութեան") եւ որոց հաւատով, բարեպաշտութեամբ եւ երկիւղիւ Աստուծոյ՝ մտանեն ի սմա" (այսպէս յոյնն ալ, εἰσιόντων ἐν αὐτῷ.) — "սարկաւագութեան" բառէն ետքը կը կցուի՝ "եւ ամենայն եղբարց հոգեւորաց, զՏէր աղաչեսցուք." — "Աստուածահաճոյ" բառին տեղ՝ "աստուածապահ" կ'ըսէ յոյնը (καὶ θεοφυλάκτων βασιλέων), իսկ "զինուորեալ մանկանց" հայոյն դարձուած մըն է փխ. "եւ զօրաց նոցա" (τοῦ στρατοπέδου αὐτῶν) — "...զամենայն թշնամի եւ զպատերազմ" ուսուցի եզակի. — "Վասն սրբոյ բնակութեան (τῆς ἁγίας Μονῆς կամ քաղաքիս." հայը հոն ալ՝ "վասն քաղաքիս այսմիկ շինութեան") եւն. — "Վասն նաւորդաց, ճանապարհորդաց, հիւանդաց, աշխատելոց, գերելոց, եւ փրկութեան նոցա, զՏէր աղաչեսցուք." — "...ի վտանգէ եւ ի հարկէ" (κινδύνου, καὶ ἀνάγκης, վերջինս չունի հայն։) — Վերջինը՝ "Վասն ամենայն անձին" եւն, չկայ յունականին մէջ, որ սոսր տեղ կը կցէ՝ "Ընկալ, կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ, Աստուած, շնորհիւ քով։ Զամենասուրբ, զանարատ, զգովեալ (ὑπερευλογημένη, գերագովեալ), զփառաւորեալ, զտիկին (δέσποινα, տիրուհի) մեր Աստուածածինն, զմիշտ կոյսն Մարիամ հանդերձ ամենայն սրբովք յիշելով, զանձինս եւ զմիմեանս եւ զամենայն կեանս մեր Քրիստոսի Աստուծոյ յանձն արասցուք։" Ասկէ ետքը՝ "Քահանայն է յայն. Զի քեզ վայելէ փառք, պատիւ եւ երկրպագութիւն, Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ" եւն։ Թէ սոսնք ինչ կերպով կան այժմու սովորական պատարագին մէջ, յայտնի է. (տես Տարեւոր Կարգ Դպրութեան, Վիեննա 1877. էջ 12 եւ այլուր.) Նոյները՝ ընդարձակուած եւ ճոխագոյն՝ նաեւ Աւագօրեան ժամերգութեան մէջ։

են ի Նոսա, զՏէր աղաչեսցուք: — Վասն բարեխառնութեան աւդոց, քաջարերութեան պտղոց երկրի եւ ժամանակաց խաղաղականաց, զՏէր աղաչեսցուք: — Վասն ճանապարհորդաց, նաւորդաց, խոստովանողաց, զՏէր աղաչեսցուք: — Վասն փրկելոյ զմեզ յամենայն նեղութենէ, ի բարկութենէ եւ ի վտանգէ, զՏէր աղաչեսցուք: — Վասն ամենայն անձին քրիստոնէի եւ տան հաւատացելոյ, զՏէր աղաչեսցուք:

## ԱՂԱԻԹՔ ԱՌԱՋԻՆ ԿՑՈՐԴԻՆ[8]

*Քահ.* Տէր Աստուած մեր որոյ կարողութիւնդ անքնին է եւ փառքդ անհասանելի, որոյ ողորմութիւնդ անչափ է եւ գթութիւնդ անբաւ[9]: Դու ըստ առատ մարդասիրութեանդ քո նայեա ի ժողովուրդս քո եւ ի տաճարս յայս սուրբ, եւ արա ընդ մեզ եւ ընդ աղաւթակիցս մեր առատապէս զողորմութիւն քո եւ զգթութիւն: — *Սար*[10]. Ընկալ կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ Տէր քոյին շնորհիւդ: *Ժողովուրդն.* Կեցո Տէր: (*Սար.*) Զամենասուրբ, բուհի Աստուածածինն զաւրհն.: Նա եւս միաբանութեամբ վասն ճշմարիտ սուրբ.: Զանձինս մեր եւ զմիա: Ողորմեաց մեզ Տէր Ա.ս: — *Քահ.* ի ձայն[11].

քան M “տան հաւատացելոց:„ ‖[67] M “անքնին:„ Աւելէ սկսեալ բաւական մեծ մասի մը Լ ձեռագրին ընթերցմունքն անծանօթ են ինձ, մինչեւ “Մտից„ աղօթքին վերջը, տես վարը Ծան. ի Տողն 117: Երկուքին տարբերութիւնքն շատ մեծ ալ չեն: ‖[71] Հոս եւ ի յաջորդս M միշտ “կեցոյ„ կը գրէ: ‖[72] M “քոին շնորհիւդ:„ — Փակագծեալ “Սարկ.„ չունի M, վասն զի խնքնին կը հասկըցուի:„ ‖[74] “զմիա„ համառօտութիւն է “զմիմեանս„ ընթերցուածոյն: Ինչպէս հոս՝ այլուր ալ վերջաւորութիւնք համառօտուած են: — Ձեռ. “Տէր ա.ս. (= Աստուած...): — Հոս եւ այլուր “ի ձայն„ խորագիրն եզերքը գրուած է “իձ„ համառօտութեամբ:

[8] Յոյնը՝ Εὐχὴ ἀντιφώνου πρώτου μυστικῶς (Աղօթք առաջին կցորդին՝ ի ծածուկ:) Յաջորդ “քահանայն„ խորագիրը չունի յոյնը: Աղօթքն, որ Ոսկեբերանի պատարագէն է, (Daniel, p., 341, տես մեր այժմու սովորականին մէջ՝ Խորհրդատետր, էջ 27,) քիչ կը շեղի յունէն իւր առանձնայատուկ ընթերցուածներովը:

[9] Յոյնը՝ ἡ φιλανθρωπία ἄφατος... κατὰ τὴν εὐσπλαγχνίαν κτλ. (...ի ֆիլանթրոբիա ա֊ ֆադոս, գադա դին եվսբլանգխնիան„ եւն, չկայ՝ “առատ„:) Յաջորդին մէջ ալ՝ յոյնը կ'ըսէ “Նայեա ի մեզ եւ ի տունս (կամ “տաճարս, οἶκον) յայս սուրբ„ եւն:

[10] Յոյնը նախ (Ոսկեբերանին մէջ) աս խորագիրն ունի՝ “Իբրեւ կատարի Կցորդն, երթայ սարկաւագն եւ կայ ի սովորական տեղւոջ, երկիր պագանէ եւ ասէ. Եւ եւս խաղաղութեամբ զՏէր աղաչեսցուք, Ընկալ եւն: Զամենասուրբ, բուհի:„ Մնացեալը (“Եւ եւս միաբանութեան„ եւն) չկայ: Նոյն է Բարսղի Բիւզանդեան աղօթամատոյցին մէջն ալ, միայն թէ հոս նախ խորագիրն այսպէս է. “Յորժամ ասէ քահանայն ի ծածուկ զաղօթս ի բեմին, ի նմին ժամանակի ասէ սարկաւագն զխաղաղականս արտաքոյ բեմին: Իսկ եթէ սարկաւագ չգուցէ, ինքն իսկ քահանայն յետ աղօթիցն ասէ զխաղաղականսն, եւ ապա ասէ ի ձայն բարձր. Զի քո է կարողութիւն„ եւն:

[11] Այս վերջաբան աղօթքն ունի հոս նաեւ Goarի հրատարակութիւնը. (էջ 159:) “Իշխանութիւն„ բառին տեղ յոյնը προσκύνησις, “երկրպագութիւն„ կ'ըսէ. (տես նաեւ Ծան. 7 վերջերը:) Danielի հրատարակութեան մէջ ընդհակառակն սոր տեղ կը գրուի Ոսկեբերանի սա աղօթքը. (Հոս էջ 342.) “Զի քո է կարողութիւն եւ քո է թագաւորութիւն եւ զօրութիւն եւ փառք, Հօր եւ Որդւոյ եւն. (մեր այժմու խորհրդատետրին մէջ՝ “Զի քո է կարողութիւն եւ զօրութիւն եւ փառք յաւիտեանս. ամէն:„)

Զի քեզ վայելէ ամենայն փառք, պատիւ եւ իշխանութիւն այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:

*Փոխածայն:*[12] Բարի է խոստովան լինել Տեառն. սաղմոս ասել անուան քում բարձր: Բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնին փրկիչ կեցո զմեզ: Պատմել առաւաւտու: Բարեխաւսութեամբ: Փառք Հաւր եւ: Բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնին: — *Սար.* Եւ եւս խաղաղութեամբ: *Ժողովուրդն.* Տէր ողոր.:

## Ա Ղ Ա Ւ Թ Ք   Ե Ր Կ Ր Ո Ր Դ   Կ Ց Ո Ր Դ Ի Ն

*Քահանայն սաէ զաղաւթս:*[13] Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս քո. զլրումն եկեղեցւոյ քո պահեա, սրբեա զնոսա որք ողջունեն[14] սիրով զվայելչութիւն տան քո: Դու զմեզ փառաւորեա աստուածային զաւրութեամբ քո եւ մի թողուր զյուսացեալքս ի քեզ: — *Սար.*[15] Ընկալ կեցո: Զամենասրբուհի Աստուածածին:

*Քահ.*[16] Զի քո է կարողութիւն եւ զաւրութիւն եւ փառք այժմ եւ:

*Փոխածայն:*[17] Տէր թագաւորեաց, զվայելչութիւն: Բարեխաւսութեամբ սրբոց քոց փրկիչ կեցո զմեզ: *Մինչեւ վճարի փոխա[ծայնն:]* փառք Հաւր եւ: Բարեխաւսութեամբ: — [Միածին Որդի եւ Բանդ Աստուած, եւ անմահ էութիւն, որ յանձն առեր մարմնանալ ի սուրբ Աստուածածնէն, եւ ի միշտ կուսէն անփոփոխելի, մարդ եղեալ եւ խաչեցար. Քրիստոս Աստուած, մա-

‖83 Ձեռ. "Քահ. սաէ զաղ:" ‖85 Ձեռ. "որք ողջունին զվայելչութիւն...:"
‖91 Բաժանմունք բառից բառ ձեռագրին են. մեզի սովորականը՝ ծանօթ է

[12] Փոխածայնը չի գրուիր Բիւզանդեաններն մէջ, ուր անոր տեղ սա խրատագիրը կայ՝ "Զկնի խաղաղականացն՝ սաղմոսէ դասն զառաջին կցուրդն, կամ զնշանակեալսն (τὰ τυπικά) եթէ կիւրակէ իցէ, ապա թէ ոչ՝ զաւուրն:"

[13] Յոյնը՝ "Աղօթք երկրորդ կցուրդին ի ծածուկ." (εὐχὴ ἀντιφώνου δευτέρου μυστικῶς.) Աղօթքս Ոսկեբերանի Պատարագէն է. (Dan., էջ 342, մեր խորհրդատետրն՝ էջ 28:)

[14] "Ողջունեն" հոս մեր սովորական պատարագին ընթերցուածն է եւ գուցէ անոր ազդեցութեամբը գրուած: Յոյնն ուղղագոյն է հոս ընթեռնլով՝ "որ սիրեցին զվայելչութիւն տան քո" (τοὺς ἀγαπῶντας τὴν εὐπρέπειαν): "Ողջունել" թարգմանչէ՞ն գրչէն է արդէն. չենք կարծեր: Յաջորդին մէջ ալ յոյնը կ'ըսէ՝ "Դու զմեզ փառաւորեա" եւն:

[15] Յոյնը՝ "Աստէն որպէս յառաջնումն (խաղաղականքն), եթէ գուցէ սարկաւագ եւ եթէ չգուցէ: Եւ եւս: Ընկալ: Զամենասրբուհի:" Յետոյ "Քահանայն ի ձայն:"

[16] Այս աղօթքը քիչ մը յառաջ ունէր յոյնը (տես Ծան. 11) ըստ Danielի: Հոս ալ Goarի հրատարակութիւնը կը համընթանայ հայոյն՝ այստեղ դնելով՝ "Զի քո է կարողութիւն" եւն:

[17] Ինչպէս վերը (Ծան. 12) հոս ալ յոյնը փոխածայնին տեղ սա խորագիրը կը կցէ. "Զկնի երկրորդ խաղաղականացն սաղմոսէ դասն զերկրորդ կցուրդն. կամ զնշանակեալսն՝ եթէ կիւրակէ իցէ, ապա եթէ ոչ՝ զաւուրն:" Ասոր կը կցի Երրորդ Կցուրդին աղօթքը՝ "Որ հասարակաց զայս" եւն: Ուստի փակագծեալ ժամամուտը ("Միածին Որդի") չի նշանակուիր յոյնին մէջ. չենք ալ կարծեր որ թարգմանչէն ըլլայ այստեղ գրուած. վերջէն մտած ըլլալու է մեր սովորականներէն. (տես Տաթեւոր Կարգ գպրութեան, Վիեննա, 1877, էջ 77:)

*հուամբ զմահ կոխեցեր, մինչ ի սրբոյ Երրորդութենէ փառաւորակից ընդ Հաւր եւ ընդ սրբոյ Հոգւոյն, կեցո զմեզ։]*

## ԱՂԱՒԹՔ ԵՐՐՈՐԴ ԿՑՈՐԴԻՆ

*Քահանայն խոնարհի եւ աղաւթէ:*[18] *Որ հասարակաց զայս եւ միաձայն մեզ ամենեցուն ուսուցեր աղաւթել եւ զերկուց եւ զերից միաձայնելոց յանուն քո զխնդրուածս պարգեւել խոստացար։ Դու եւ այժմ զծառայից քոց զխնդրուածս առ ի յաւգուտն կատարեա շնորհել մեզ յայսմ յաւիտենիս զգիտութիւն քում ճշմարտութեանդ. եւ ի հանդերձեալն զկեանն յաւիտենականս պարգեւելով։ — Սար.*[19] *Դու ես խաղաղութեան զՏէր։ Ընկալ կեցո։ Զամենասրբուհի։*

*Քահ. ի ձայն. Զի բարերար*[20] *եւ մարդասէր ես Աստուած գոլով, եւ քեզ վայելէ փառք։*

*Փոխա[ձայն.]*[21] *Եկայք ցնծասցուք ի Տէր, աղաղակեսցուք առ Աստուած փրկիչ մեր։ Զի սքանչելիդ ես ի վերայ սրբոց քոց, սաղմոսելով քեզ ալէլուիա։ Կեցո զմեզ Որդի Աստուծոյ որ յարեարդ ի մեռելոց, սաղմոսելով քեզ ալէլուիա ալէլուիա ալէլուիա։ Մինչեւ Եկայք երկիր պագցուք։ Փառք Հաւր. կեցո, այժմ. եւ կեցո։*

## ԱՂԱՒԹՔ ՄՏԻՑ

*Գ. — Քահանայն խոնարհի եւ աղաւթէ ի մուտս խորանի:*[22] *Տէր Տէր Աստուած մեր, որ կարգեցեր յերկինս դասս եւ զաւրութիւնս հրեշտակաց*

---

որ քեզ մ'այլազգ է։ ||[94] Զեռ. "ի յերրորդութենէ։" ||[107] Զեռ. "Զարմանչելիդ ես....։" — Զեռ. "սաղմոսելով քեզ։ ալէլու։" ||[108] Զեռ. "մինչեւ եկայք երկիր պ. ...այժմ եւ կեցոյ։ գ.։" (Վերջինս անշուշտ "զմեզ" բառին տեղն է։) ||[112] Զեռ. (M) "եւ աղաւթէ։" ||[117] Որ սկսի Լի ընդօրինակու-

[18] Յոյնը՝ "Աղօթք երրորդ Կցորդին՝ ի ծածուկ" (μυστικῶς, զոր մեր աղօթամատոյցք սովորաբար կը թարգմանեն՝ "խորհրդաբար։") Աղօթքս նոյնպէս Ոսկեբերանէն է. (Dan., p. 343.) եւ բառ առ բառ ճիշդ. միայն "ամենեցուն" կը պակսի, բայց այսմ՝ "...միաձայն՝ ձեզ պարգեւել խոստացար" եւն։

[19] Հոս ալ Յոյնը (Goarի համեմատ, էջ 160) "Աստէն եւս որպէս յառաջին աղօթն եւ յերկրորդումն, եթէ գուցէ սարկաւագ, եւ եթէ ոչ։ Ես եւս։ Ընկալ։ Զամենասրբուհի։" Աս եւ յաջորդներն մինչեւ Աղօթք Մտից՝ չկան Danielի հրատարակութեան մէջ (էջ 422)։

[20] "Բարերար" հայերէն առանձնայատկութիւն մըն է փխ. "բարի (ἀγαθὸς հմմտ. վարը՝ "քում բարերարութեանդ = τὴν σὴν ἀγαθότητα). Նոյնպէս է՝ "եւ քեզ վայելէ փառք" փխ. "եւ քեզ փառս մատուցանեմք (ἀναπέμπομεν, "վերառաքեմք", ինչպէս սովոր են ըսել յունաբան Հայք՝) Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ եւն։ Ժողովուրդն. Ամէն։"

[21] Նոյնպէս՝ ինչպէս վերն երկու անգամ (տես Դրան, 12 եւ 17), յոյնը հոս ալ խորանագիրս միայն ունի՝ "Աստէն՝ որպէս ի պատարագին Ոսկեբերանի, զնոյն սաղմոսէ դասն, եւ քահանայն եւ սարկաւագն զնոյն առնեն եւ առնեն։"

[22] Յոյնը՝ Εὐχὴ τῆς Εἰσόδου τοῦ ἁγίου Εὐαγγελίου μυστικῶς ("Աղօթք Մտից սրբոյ Աւետարանին՝ ի ծածուկ։") Աղօթքը դարձեալ Ոսկեբերանէն է. (Dan. p. 344.)

եւ հրեշտակապետաց ի սպասաւորութիւն[23] փառաց քոց. արա եւ այժմ ընդ մուտս մեր մտանել եւ սրբոց հրեշտակաց. եւ լինել պաշտօնակից մեզ եւ փառաբանակից քում բարերարութեանդ: — *Ի ձայն.*[24] — Զի քո է կարողութիւն եւ զօրութիւն եւ փառք այժմ: — *Սար.* Սոփիա ոռթիւ[25], որ է իմաստութեամբ որթիւ: Երկայք երկիր պագցուք: *Եւ ասեն ըստ աւուրն պատկերի շարական եւ Փառքն եւ Աստուածածնի շարական եւ ասի.* Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ, ողորմեա մեզ:

Ա Ղ Օ Թ Ք Ե Ր Ե Ք Ս Ր Բ Ե Ն Ի

Գս. — *Եւ անդէն առ նմին քահանայն խոնարհի եւ աղօթէ:*[26] Սուրբ սրբոց Աստուած մեր, որ միայն սուրբ ես եւ ի սուրբս հանգուցեալ: Սուրբ

թիւնք: — M “սոփիա ոռթիւ:„ L այսպէս ունի. “Եւ մտանեն ի խորանն եւ ասեն շարական ըստ աւուրն խորհրդոյ: Սարկ. Սոփիա, իմաստութեամբ որթիւ:„ Ուստի հոս ի սկզբան ունի այն կարմրագիրն, զոր M “Երկայք երկիրպագցուք„ խօսքէն (— որ կը պակսի ի L —) յառաջ ունի գրելով՝ “Եւ ասեն ըստ աւուրն...:„ ‖119 “Սուրբ Աստուած„ին մէջ M ու յետադասեալ յաւելուածն ալ ունի “...անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա„ եւն: L այս մասն բոլորովին այլազգ է՝ գրելով. “Եւ ժողովուրդն սկսանին զերեքսրբեան փառաբանութիւնն ի Հայր եւ յՈրդի եւ ի սուրբ Հոգին, որպէս հրամայեն սուրբ քահանայապետքն Քրիստոսի Ներսէսեանքն ի սուրբ պատարագն. Սուրբ Աստուած, Սուրբ եւ հզօր, Սուրբ եւ անմահ՝ Հայր եւ Որդի եւ Սուրբ Հոգի՝ ողորմեա մեզ:„ ‖122 L “աղօթէ:„ ‖124 M “զանքննին.„ L “զանքննին:„ Այս եւ

[23] “Ի սպասաւորութիւն„ = εἰς λειτουργίαν, քիչ մ'ետքը՝ “լինել պաշտօնակից մեզ„ = συλλειτουργούντων ἡμῖν:

[24] “Ի ձայն„ չունին հայերէն Օրինակները եւ ոչ Daniel, բայց ունի եւ աւելի պատշաճաւոր՝ Goarի բնագիրը: Բայց փոխանակ “Զի քո է կարողութիւն„ վերջաբանին՝ յոյնն ունի՝ “Զի քեզ վայելէ փառք, պատիւ եւ երկրպագութիւն Հօր„ եւն:

[25] “Սոփիա ոռթիւ„ = σοφία ὀρθοί Ոսկեբերանի պատարագին նախընթաց աղօթքին կից քարոզութեանց մէջ. (Dan. p. 344.) Բարբի բիւզանդեանք այս ամբողջ կտորին տեղ սա խորագիրը միայն կը կցեն. “Զկնի աղօթիցն՝ քահանայն եւ սարկաւագն եւ գան զնոյն արասցեն եւ ասասցեն, որ ինչ ի Պատարագին Ոսկեբերանի:„ Վերջինս այստեղ շատ կ'առատանայ խորագիրներով եւ ուրիշ մանրամանութիւններով: Այսու հանդերձ չունին հայոյն խրատը թէ “եւ ասեն ...շարական, փառքն եւ Աստուածածնի շարական:„ Այս տողն՝ հայ եկեղեցւոյ սովորութեան համեմատ ըլլալով՝ յետադասուած է:

Գ. [26] Յոյնը՝ Εὐχὴ τοῦ Τρισαγίου, ἣν ὁ ἱερεὺς μυστικῶς λέγει. (Աղօթք Երեքսրբենին, զոր ասէ քահանայն ի ծածուկ:) Աղօթքը նոյնպէս Ոսկեբերանէն է. (Dan., p. 345.) Հայը բաւական կը շեղի վերջինէն: Յոյնը ի սկզբան համառօտ է այսպէս (ճշդիւ ըստ մեր սովորականին, տես Խորհրդատետր, էջ 29): “Աստուած սուրբ. որ ի սուրբս հանգուցեալ ես, երեքսրբեան ձայնիւ սերովբէքն գովեն զքեզ եւ քերովբէքն փառաբանեն, եւ ամենայն երկնային զօրութիւնք քեզ երկիրպագանեն:„ Ասկէ ետքն աւելի կ'ընդարձակի՝ սկսելով՝ “Որ ի չգոյէ ի գոյ ածեր զամենայն արարածս: Որ արարեր զմարդն ըստ պատկերի„ եւն եւն: Միով բանիւ երկու աղօթքները նոյն կաղապարի վրայ ձուլուած, բայց միաբան եւ նոյն չեն: Ուստի՞ է հայոյնը: Ոսկեբերանի Պատարագէն, ամէն դէպքի մէջ, բայց բոլորովին ուրիշ խմբագրութեան մը հետեւելով: Աս ալ անծանօթ չէ. Danielի քով նոյն տեղ յառաջ կը բերուի ծանօթութեան մէջ, եւ է Ժ դարու գրուած Բարբերինեան Օրինակին համեմատ: Դայրէ ծայր կը համընթանայ Բարբ. եւ կը սկսի հայոյն հետ՝ Ἅγια ἁγίων ὁ θεός, ὁ μόνος ἅγιος κτλ. Վերջնոյս հետ կը համեմատենք յաջորդաւ հայոյն ընթերցուածները:

ես, որ զանքնին[27] փառս զգեցեալ ունիս: Սուրբ Աստուած որ զամենայն բանիւ գոյացուցեր: Սուրբ Աստուած զոր չորեքկերպեան կենդանիքն անդադար փառաւորեն: Սուրբ Աստուած որ ի բազմութենէ հրեշտակաց եւ հրեշտակապետաց անտեսանելի դողմամբ երկրպագիս եւ փառաբանիս: Սուրբ Աստուած որ ի բազմաչեայ քերովբէիցն յանլռելի ձայնս եւ յաննինջ աչս նայելով խոնարհեցուցանես զունկն քո: Սուրբ Աստուած որ ի վեցթեւեան սերովբէսդ հանգչիս. եւ զծափս թեւոց նոցա եւ զվերայաղթական աւրհնութիւնս երգելով զՍուրբ սուրբ սուրբ տէր զաւրութեանցն ընդունիս. զի սուրբ ես Աստուած մեր, որում պետութիւնքն, եւ իշխանութիւնքն յերկինս երկրպագեն, եւ ի վերայ երկրի մարդիկ վերաւրհնեն եւ փառաւորեն: Ինքնին Տէր մարդասէր ընկալ եւ ի բերանոյ մերոց մեղաւորացս զերեքսրբեան աւրհներգութիւնս, զմատուցեալս առ ի մէնջ եւ յամենայն ժողովրդենէ քումմէ, եւ առորատաքեա ի մեզ զառատ ողորմութիւն քո. բարեխաւսութեամբ սրբուհւոյ

յաջորդ աղօթից ալ շատ մասերուն Lի ընթերցումն չունիմ այժմ առ ձեռն, սակայն կարեւոր տարբերութիւն ունենալու չէ Lուր կարեւոր կէտ կայ՝ արդէն նշանակուած է ընդօրինակութեան մէջ: ‖128 M "բազմաչեա." ‖129 M "սէրովբէսդ:" ‖130 M "զվերայ յաղթական..." L "զվերայաղթական օրհնութիւնս:" ‖131 L "տէր զօրութեանց:" Մի անգամ ըսենք որ M միշտ — կը գրէ, L միշտ ο: ‖136 Զեռ. (M) եւ առոր առաքեա:" ‖140 Զեռ. (M) "պաւաւոխումէն:"

27 Բարբ. ἀνυπέρβλητον δόξαν ἐν αὐτῷ κεκτημένος ("Հանանց փառք է մէջ զգեցեալ ունիս:") — Յաջորդին մէջ՝ "անդադար" կը համապատասխանէ Բարբերինեանի Օրինակին ἀναπαύστῳ φωνῇ բառին ("անհանգիստ" կամ "անդադար ձայնիւ:) — "Անտեսանելի դողմամբ" գրչաց չփութութեան մ'արդիւնք ըլլալու է, Բարբերինեանն կը գրէ՝ ...ἀρχαγγέλων ὁρασίᾳ τρεμόντων. այսինքն՝ "...հրեշտակապետաց, որ դողան ի տեսլենէ քումմէ": — "Ծափս թեւոց" լաւ կը բացատրէ յունին κροτούντων τὰς ἑαυτῶν πτέρυγας. բայց այնչափ յաջող չեն յաջորդները՝ "վերայաղթական" պարզ նմանողութիւն ըլլալով ἐπινίκιον (յաղթական) բառին կազմակերպութեան. իսկ "ընդունիս" գրելով՝ ուր յոյնը ὁ προσερχόμενος ("որ գայ") է, բոլորովին ուրիշ կերպարանք առած է խօսքը, մանաւանդ որ այս "ընդունիս" կապ եղած է "Սուրբ, սուրբ" եւն խօսքին: Բարբերինեանն այսպէս ունի այս եւ յաջորդ նախադասութեանց կապակցութիւնն՝ "որ զյաղթական օրհնութիւնն երգեն՝ զՍուրբ, սուրբ, սուրբ Տէր Սաբաւովթ, որ գայ, սուրբ է Տէր Աստուած մեր: Պետութիւնք եւ իշխանութիւնք, տէրութիւնք (κυριότητες) յերկինս" եւն: Ընդհակառակն շատ ուրախական է տեսնել որ հայը "մարդիկ վերաւրհնեն" ըսելով կ'ուղղէ Բարբերինեան Օրինակին սխալը ἀνθρωπίαν ὑμνοῦσιν ("մարդկութիւն աւրհնեն". որդէն Daniel կ'առաջարկէ ἄνθρωποι ուղղել:) Հայն ըստ այսմ Ծ դարու Բարբերինեանէն անկախ եւ լաւագոյն օրինակ մ'ունէր առջեւը: — "Տէր մարդասէր" հայոյն յատուկ է (Բարբ. չիկ φιλάνθρωπε), նոյնպէս "ի բերանոյ մեղաւորացս զերեքսրբեան աւրհներգութիւն՝ զմատուցեալս եւն", որուն տեղ Բարբերինեանն ունի՝ "Պոմարդասէր, ընկալ զօրհնութիւնս զմատուցեալս ի մէնջ" եւն. — "Առորատաքեա" բառական հետեւողութիւն է յունականին՝ κατάπεμψον, (յոյնը կը կցէ "...զողորմութիւնս քո եւ զպարգեւս" եւն). Նոյնպէս "որ բարեհաճոյացան" = τῶν ... σοι εὐαρεστησάντων.

— Ասկէ ետքը մինչեւ Բաղկատարած աղօթքն չի գրեր Բիւզանդեանն, այլ Ոսկեբերանի պատարագին կը խաւրէ, գրելով՝ "Ի կատարել աղօթիցն եւ սաղմոսելոյ դասուն զՓառք եւ զԱյժմ, քահանայն եւ սարկաւագն սաղմոսեն զերեքսրբեանն, եւ զայլ ամենայն առնեն որպէս ի Պատարագին Ոսկեբերանի: Իսկ յետ Աւետարանին՝ առէ սարկաւագն. Աղաչեսցուք ամենքեան յամենայն հոգւոյ: Տէր ամենակալ Աստուածդ երկնաւոր: Դարձեալ աղաչեմք ի վերայ:" Հայոյն այստեղ գրածներն արդէնք ալ՝ քիչ շատ տարբերութեամբ՝ կան Ոսկեբերանի Պատարագին մէջ. (Daniel, p. 346—8.)

Աստուածածնիդ եւ ամենայն սրբոց քոց որք յաւիտենից քեզ բարեհաճեցան: — Ի ձայն. — Զի սուրբ ես Աստուած մեր. քեզ փառս մատուցանեմք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ:

*Սար.* Պատասխանիքն: *Քահ.* Խաղաղութիւն ընդ ամենես: *Ժողով.* Եւ [ընդ] հոգւոյդ քում: *Սար.* Սոփիա:[28]

*Եւ ասի Սաղմոս. ընթեռնու Առաքեալ, եւ ասի Ալէլու: Կարդան աւետարան: Սար.* Իմաստութեամբ ուղիղ:

*Զկնի աւետարանին սարկաւագն քարոզէ:* Ասասցուք[29] ամենեքեան Տէր ողորմեա: *Ժողով.* Տէր ողորմեա: [*Սար.*] Յամենայն անձնէ եւ յամենայն մտաց զՏէր աղաչեսցուք: [*Ժողով.* Տէր ողորմեա: *Սար.*] Տէր ամենակալ երկնաւորդ[30] Աստուած հարցն մերոց աղաչեմք զքեզ, լուր մեզ եւ ողորմեա: *Ժողով.* Տէր ողորմեա: [*Սար.*] Որ ոչ խորհիս զմահ մեղաւորին այլ զդառնալ նորա ի չար ճանապարհէն եւ զկեալն, աղաչեմք զքեզ: — Որ առատ ես յողորմել՝ աղաչեմք: — Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան՝ աղաչեմք զքեզ[31]:

Ս Դ Ա Ի Թ Ք Բ Ա Ջ Կ Ա Տ Ա Ր Ա Ծ

Ի. — *Աղաւթք բազկատարած Ցուցանոս:*[32] [*Քահ.*] Տէր Աստուած մեր զբազկատարած զաղաչանս ծառայից քոց վերընկալցիս եւ ողորմեսցիս ըստ մեծի ողորմութեան քում: Զգթութիւն քո առաքեա ի վերայ մեր եւ ամենայն ժողովրդեանս որք ակն ունին առ ի քէն առատ ողորմութեանդ:

*Սարկաւագն քարոզէ:* Եւ եւս վասն բարեպաշտ եւ աստուածապահ թագաւորաց մերոց կարողութեան, յաղթութեան եւ հանապազորդ խաղաղութեան, առողջութեան եւ փրկութեան նոցա. եւ որպէս զի Տէր Աստուած

L Այս մասն բոլորովին այլազգ ունի՝ "Սրկ. Սոֆիա Աւթի (այսպէս) իմաստութեամբ լուարուք սրբոյ աւետարանին: Ժող. Փառք քեզ Աստուած: Պատասխանիքն: Եւ կարդան զաւետարանն: Զկնի քարոզէ Սարկ. Ասասցուք„ եւն: ‖[141] Այս "ընդ„ չկայ ի M. (L չունի զայս եւ յաջորդքն մինչեւ "Ասասցուք„ եւն:) ‖[143] Ձեռ. (M) "իմաստութեամբ ուղիղ:„ ‖[145] Հոս եւ ի յաջորդս Ձեռ. չունի փակագծեալ "Սար.„ խորագիրն՝ ինքնին հասկցուելով: ‖[146] Ձեռ. չունի փակագծեալն: ‖[153] Փակագծեալք հոս եւ այլուր չկան ձեռագրին մէջ: ‖[160] Ձե-

[28] "Սոփիա„ փչրանք մըն է. յոյնը՝ "Սոփիա, ուղիղ, լուիցուք սրբոյ աւետարանիս.„ բայց այս խօսքը քահանային բերանը կը դնէ, նոյնպէս նաեւ՝ "պատասխանիքն„ բացայայտութիւնն այստեղ. (տես Dan. p. 847:)

[29] Յունականին մէջ Քարոզութեանս առաջին եւ երկրորդ կտորը մէկ խօսք մը կը կազմեն՝ "Ասասցուք ամենեքեան յամենայն անձնէ եւ յամենայն մտաց մերոց ասասցուք. Ժող. Տէր ողորմեա: Սրկ. Տէր ամենակալ„ եւն:

[30] "Երկնաւորդ„ կը պակսի յունականին. նոյնպէս չկան հոն՝ "Ժող. Տէր ողորմեա: Սրկ. Որ ոչ խորհիս զմահ„ եւն՝ մինչեւ "որ առատ ես յողորմել աղաչեմք:„

[31] Յոյնը՝ "... Աղաչեմք զքեզ, լուր մեզ եւ ողորմեա:„

Ի. [32] Յոյնը՝ "Իսկ աստ քահանայն զայս աղօթս ի ծածուկ:„ Այս մասերն ալ Ոսկեբերանէն են. (Daniel 348.) "Աղօթք բազկատարած„ = *Εὐχὴ τῆς ἐκτενοῦς ἱκεσίας*. Աղօթքս ճշգիւ նոյն է հոն ալ: Քիչ շեղումներ կան յաջորդ Սարկաւագի քարոզութեան մէջ:

մեր առաւել գործակից լեցի նոցա եւ առաջնորդեսցէ ամենայնի, եւ հնազանդեսցուսցէ ընդ ոտիւք նոցա զամենայն թշնամի [եւ] պատերազմող, աղաչեսցուք ամենեքեան՝ Տէր ողորմեա։ *Ժողովուրդն բազմապատիկ Գ* Տէր ողորմեա[33]։ [*Սարկ.*] Եւ եւս վասն արքեպիսկոպոսապետին մեր կենաց եւ փրկութեան[34] եւ որ ի Քրիստոս սարկաւագութեան եւ ամենայն ժառանգի եւ ժողովրդեանն զՏէր աղաչեսցուք։ — Եւ եւս վասն յառաջագնացեալ հարց եւ եղբարց մերոց եւ համարէն առաջի կացեալ ժողովրդեանս որք եկեալ մնայլութեամբ մտին ի տուն Տեառն աղօթակից լինելով մեզ, զՏէր աղաչեսցուք։ *Ցայս տունս խաչակնքէ քահանայն ի վերայ ժողովրդեան:* — Եւ եւս աղաչեսցուք զի լուիցէ Տէր Աստուած ձայնի աղաչանաց մերոց եւ ողորմեսցի մեզ, եւ վասն դարձուցանելոյ ի մէնջ զամենայն բարկութիւն, զխորհուրդ չար յարուցեալ ի վերայ մեր, եւ խորտակել զաներեւոյթ թշնամին ընդ ոտիւք մերովք, եւ պարգեւել բժշկութիւն հիւանդաց եւ հանգիստ ննջեցելոց աղաչեսցուք ամենեքեան։ *Ժողով.* Գ Տէր ողորմեա։ — [*Սար.*] Եւ եւս աղաչեսցուք վասն ծառային Աստուծոյ *Այս անուան* առողջութեան, փրկութեան եւ թողութեան մեղաց, զՏէր աղաչեսցուք։ *Ժողով.* Գ Տէր ողորմեա։

*Քահանայն ի ձայն.* Ողորմած եւ մարդասէր ես Աստուած գոլով, քեզ վայելէ[35] փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ։

---

ւագիրք (M եւ L) "թշնամի պատերազմող։" ||[168] L այսպէս ունի կարմրագիրս. "Ցայս տունս խաչ † կնքէ քհ. ի վերայ ժողովրդեան։" — M "ի վերա":

[33] Քարոզութեան առաջին մասը՝ թագաւորաց համար աղաչանքը՝ չունին շատ յոյն օրինակներ, կ'երեւայ եւ ոչ հնագոյն Բարբերինեանը. բայց ի Morellinսի հրատարակութենէն (Venet. 1560, p. 687, Daniel, p. 347, Ծան. առ XX) եւ Goarէն (p. 69.) Տարբերութիւնք չնչին են. այսպէս՝ "հանդարտ խաղաղութեան" ենթադրել կու տայ որ հայոյն գործածած բնագիրն հոս ածական մ'ունէր, Morelli ունի՝ διαμονῆς, εἰρήνης (կամ "... հանդարտութեան, խաղաղութեան") եւն։ Նախնակա՞ն է նոյնպէս "զամենայն թշնամի պատերազմող։" Կ'երեւայ, վասն զի յոյնն ալ հաւանական կ'ընէ գրելով՝ πάντα ἐχθρὸν καὶ πολέμιον ("զամենայն թշնամի եւ զպատերազմող։) — Ժողովրդեան պատասխանները ամբողջ քարոզութեանս շարունակութեան՝ չեն գտնուիր յունականին մէջ։

[34] "Եւ փրկութեան" բառէն սկսեալ մինչեւ վերջն յընդհանուրն միայն կը միաբանի յունականաց հետ, վերջիններս բազմօք տարբերելով, մանաւանդ սկիզբներն։ Յունականք այսպէս ունին՝ "Դարձեալ աղաչեսցուք ի վերայ արքեպիսկոպոսին մերոյ (այս անուն), պատուական քահանայութեան։ Դարձեալ աղաչեսցուք վասն եղբարց մերոց, երիցանց, վարդապետաց (ἱερομονάχων), եւ ամենայն ի Քրիստոս եղբայրութեանս մերոյ։ Դարձեալ աղաչեսցուք վասն ողորմութեան կենաց, խաղաղութեան, առողջութեան, այցելութեան, թողութեան եւ քաւութեան մեղաց ծառայից Աստուծոյ եղբարց այսր սրբոյ բնակութեանս։ Դարձեալ աղաչեսցուք վասն երջանիկ եւ հռչակաւոր տերանց (ստացողաց) սրբոյ բնակութեանս այսորիկ, եւ վասն ամենայն յառաջագոյն հանգուցելոց հարց (— προαναπαυσαμένων, ու է թարգմանչին՝ "վասն յառաջագոյն հանգուցելոց հարց" եւն ըսելը անյաջողութեամբ —), եւ եղբարց մերոց որ աստ կան բարեպաշտութեամբ եւ որ ամենայն ուրեք ուղղափառաց։ Դարձեալ աղաչեսցուք վասն պտղաբերից եւ բարեգործաց ի սուրբ եւ մեծարգոյ տաճարիս յայսմիկ, վաստակաւորաց եւ սաղմոսողաց, եւ վասն շուրջ կացեալ ժողովրդեանս՝ որ ակն ունի առ ի քէն մեծի եւ առատ ողորմութեան։" — Տարակոյս չունինք, նախընտրելի են այս ամէնուն դէմ՝ հայոյն տուած ընթերցուածները։

[35] Հոս ալ յոյնը՝ ինչպէս անգամ մ'արդէն վերը՝ (տես Ծան. 20) "եւ քեզ մատուցանեմք (վերառաքեմք) Հօր եւ Որդւոյ" եւն։

## ԱՂՕԹՔ ԵՐԱԽԱՅԻՑ[36]

Զ. — *Սարկաւագն քարոզէ:* Աղաչեցէք երախայքդ զՏէր: *Ժողով.* Տէր ողորմեա: [*Սար.*] Հաւատացեալքդ յաղագս երախայիցն աղաչեցէք զՏէր, զի ողորմեսցի նոցա: *Ժողով.* Տէր ողորմեա: [*Սար.*] Ուսուսցէ նոցա զբանն ճշմարտութեան: *Ժողով.* Տէր ողորմեա: [*Սար.*] Յայտնեսցէ նոցա զաւետարանն արդարութեան եւ փրկութեան[37]: *Ժողով.* Տէր ողորմեա: [*Սար.*] Միաւորեսցէ զնոսա ընդ սրբուհւոյ կաթուղիկէ առաքելական եկեղեցւոյ իւրոյ, զՏէր [աղաչեսցուք:] *Ժողով.* Տէր ողորմեա: [*Սար.*] Ընկալ կեցո ողորմեա եւ պահեա զնոսա Աստուած քոյին շնորհիւդ[38]: *Ժողով.* Տէր ողորմեա:

[*Սար.*] Որք երախայքդ էք զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք:

*Աղօթք ի վերայ երախայիցն Ցով:*[39] [*Քահ.*] Տէր Աստուած մեր որ ի բարձունս բնակեալդ ես եւ զխոնարհս տեսանես, որ վասն փրկութեան ազգի մարդկան առաքեցեր զմիածին քո զՈրդիդ՝ զԱստուած եւ զՏէրդ մեր Յիսուս Քրիստոս: Նայեաց ի վերայ ծառայից քոց՝ երախայիցս որ խոնարհեցուցին զպարանոցս իւրեանց առաջի քո. արժանացո զնոսա ժամանակի ուղղութեան,[40] լուացման վերստին ծննդեան, թողութեան մեղաց եւ զգեստու անապականութեան: Միաւորեա զնոսա ընդ սուրբ կաթուղիկէ[41] եկեղեցւոյ քո եւ զուգաթուեա ընդ ընտրեալ հաւտի քում: — *Սար.* Ընկալ կեցո եւ պահեա զմեզ Աստուած: Զամենայբ.: — *Քահ. ի ձայն.* Զի եւ սոքա ընդ մեզ փառաւորեսցեն զամենապատիւ եւ զմեծվայելուչ անունդ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ:

---

‖174 Ձեռ. “առողջութիւն փրկութեան:„ ‖185 Ինչպէս վերն բանք՝ M միշտ “կեցոյ„ կը գրէ: ‖194 Ձեռ. (M) “ծննդեան, թողութիւն մեղաց.„ (բայց կրնայ “թողութեան„ ալ կարդացուիլ:) ‖200 Ձեռագրին մէջ երկրորդ “որք„

Ծ. [36] Բիւզանդեանը սարկաւագին այս ամբողջ քարոզութիւնն կը համառօտէ այսպէս՝ “Զայն ամենայն սարկաւագն ասէ ի վերայ երախայիցն՝ զոր ինչ ասէ ի Պատարագին Ոսկեբերանի: Աղաչեցէք երախայքդ զՏէր: Հաւատացեալքդ յաղագս: Ուսուսցէ նոցա: Յայտնեսցէ նոցա: Միաւորեսցէ զնոսա: Կեցո, ողորմեա: Երախայքդ զգլուխս:„ Ցետոյ կու գայ աղօթքը: Ոսկեբերանի Պատարագին մէջ ճշգիւ հայոյն համաձայն կան քարոզութիւնքն. (Daniel, p. 348—9), միայն ժողովրդեան պատասխանները կը պակսին:

[37] “Եւ փրկութեան„ հայուն յաւելուկ է:

[38] Ցոյնը՝ “Կեցո, ողորմեա, ընկալ եւ պահեա զնոսա Աստուած շնորհիւ քով:„

[39] Բիւզանդեան Բարսղինը սա խորագիրն ունի. “Աղօթք ի վերայ երախայից (Εὐχὴ ὑπὲρ τῶν κατηχουμένων) յառաջ քան զսուրբ Պատարագն, զոր ասէ քահանայն ի ծածուկ:„ Իսկ Ոսկեբերանի Պատարագին մէջ, որմէ է Աղօթքն ալ (Daniel, p. 349), խորագիրն այսպիսի է. “Աղօթք Երախայից նախ քան զփռել ծածկութին„ (մարմնականին.)

[40] Ցոյնը՝ ἐν καιρῷ εὐθέτῳ (“ի պատշաճ ժամանակի„):

[41] Ցոյնը՝ “ընդ սուրբ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցւոյ քում.„ — քիչ մ'եւսքը՝ “զուգաթուեա„ = συγκαταρίθμησον. — Աղօթքին ծայրը յոյնը կը կցէ սա խորատագիրը. “Ցետ բարձրաբարբառ աղօթիցն (μετὰ τὴν ἐκφώνησιν) սփռէ քահանայն զմարմնականն, որպէս սովորութիւն է:„

*Սար.* Որք երախայք էք՝ ելէք. [որք] երախայք էք՝ ելէք. որք երախայք էք՝ ելէք։ Մի՛ ոք յերախայից[42] մի՛ ոք ի թերահաւատից, եւ մի՛ ոք յապաշխարողաց եւ յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս։ *Ժողով.* Տէր ողորմեա։

## ԱՂԱՒԹՔ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ[43]

Է. *Քահ.* Դու Տէր ցուցեր մեզ զփրկութեան մեծ զխորհուրդս զայս, եւ դու արժանաւորեցեր զմեզ զմեղաւոր եւ զանարժան ծառայքս քո կալ առաջի սրբոյ սեղանոյս քո։ Դու իսկ զաւրացո[44] զմեզ զաւրութեամբ Հոգւոյդ սրբոյ ի սպասաւորութեանս այսմիկ, որպէս զի անդատապարտ կացցուք առաջի սուրբ փառաց քոց մատուցանել քեզ պատարագ աւրհնութեան. քանզի դու ես որ զամենայն յամենայնի լնուս[45]։ Տուր մեզ Տէր վասն մեղաց մերոց եւ ժողովրդեանս անգիտութեան ընդունելի լինել պատարագիս մեր այսաւր առաջի քո եւ հաճոյական։ — *Սար.*[46] Ընկալ կեցո։ *Ժողով.* Տէր ողորմեա։ *Սար.* Իմաստութեամբ։ — *Քահ. ի ձայն.* Զի քեզ վայելէ յամենայնի[47] փառք, պատիւ եւ իշխանութիւն այժմ եւ։[48]

*Սար.* Եւ եւս խաղաղութեան զՏէր։ *Ժող.* Տէր ողորմեա։ [*Սար.*] Վասն ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց՝ զՏէր աղաչեսցուք։ — Վասն սուրբ տանս այսմիկ եւ որք հաւատով եւ ահիւ մտանեն ի սմա, զՏէր աղաչեսցուք։ — Վասն փրկելոյ զմեզ յամենայն նեղութենէ, ի բարկութենէ եւ ի վշտաց զՏէր աղաչեսցուք։

---

բառը ջնջուած էր։ ‖205 Ուղղելու կարդալու է "զփրկութեան." ձեռագիրը՝ "...ցուցեր մեզ փրկութեան մեծ զխորհուրդս" ունի։ ‖223 Ձեռ. (M) "զաւրացոյ"։

42 Ասկէ ետքն եկածները յայտնապէս մեր սովորական պատարագէն առած մուծած են գրիչները։ Բնագրին համեմատ՝ չենք տարակուսիր՝ թարգմանիչն այսպէս գրած էր՝ "Մի՛ ոք յերախայից։ Որք հաւատացեալք էք. եւ եւս խաղաղութեամբ զՏէր աղաչեսցուք։ Դպան (կամ Ժող.) Տէր ողորմեա։"

Է. 43 Ասկէ՝ կրնանք ըսել՝ կը սկսի արդէն Բարսղի կարգադրութիւնը, թէեւ Նախերգանիս միացած մասերուն մէջ ալ կան տակաւին Ոսկեբերանէն առնուած մասեր։ Առաջիկայ աղօթքն որ Ոսկեբերանի պատարագէն չէ, սա խորագիր-խրատագիրը կը կրէ բիւզանդեան Բարսղի մէջ՝ "Աղօթք հաւատացելոց առաջին (Εὐχὴ πιστῶν πρώτη) զկնի սփռելոյ մարմնակալին, զոր ասէ քահանայն ի ծածուկ։"

44 Յոյնը՝ ἱκάνωσον ἡμᾶς ("արա զմեզ բաւականս ...ի սպասաւորութիւն") ունի։

45 Յոյնը՝ ὁ ἐνεργῶν τὰ πάντα ἐν πᾶσι ("որ գործես զամենայն յամենայնի," բուն՝ ներգործես։)

46 Այս ամենուն տեղը յոյնը կ'ըսէ հոս. "Յետ աղօթից քահանային՝ ասէ սարկաւագն զխաղաղականս, եթէ իցէ արտաքոյ բեմին։ Եւ եւս։ Ընկալ։ Զամենասրբուհի, զանարատ։ Սարկաւագն. Իմաստութիւն։ Քահանայն ի յայտ. Զի քեզ վայելէ" ունի։ Լաւագոյն է հայոյն՝ "Իմաստութեամբ" ըսելը (= σοφίᾳ. վերը քանի մ'անգամ "սոփիա" տեսանք), յոյնն է հոս σοφία։

47 Յոյնն՝ πᾶσα δόξα, "ամենայն փառք" ունի։

48 Յոյնը կը կցէ՝ "Ժողովուրդն. Ամէն։" Ընդհակառակն չունի ասկէ ետքն եկած քարոզութիւնքն, այլ անմիջապէս կը բերէ կը կցէ աղօթքն՝ "Աստուած որ այց արարեր" ունի։ Այս քարոզութիւնք տես վերը՝ Նոյն. 7։

*Քահանայն խոնարհի եւ աղաւթէ:*[49] Աստուած որ այց արարեր ողորմութեամբ քով[50] խոնարհութեան մերում, եւ կարգեցեր զմեզ զնուաստ եւ զմեղաւոր[51] ծառայքս քո կալ առաջի փառաց երեսաց քոց,[52] եւ սպասաւորել սրբոյ քում սեղանոյս. դու Տէր զաւրացո զմեզ զաւրութեամբ Հոգւոյդ քում սրբոյ ի պաշտաւնս յայս, եւ տուր մեզ բան ի բանալ զբերանս մեր առ ի կարդալ[53] զշնորհս Հոգւոյդ սրբոյ ի վերայ ընծայիցս որ հանդերձեալ է առաջարկել: *Սար.*[54] Ընկալ կեցո: Զամենասրբուհի: Սոփիա: — *Քահ. ի ձայն.* Որպէս զի ընդ կարողութեան քում պահպանեալք հանապազ՝ քեզ փառս վերառաքեմք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ:

## ՍՐԲԱՍԱՑՈՒԹԻՒՆ

Ը. — *Ու ասի Սրբասացութիւնս:*[55] Որք զքերովբէիցն խորհրդաբար կերպարանիմք զխորհուրդ եւ կենդանարար Երրորդութեանն զերեքսրբեան

‖[228] Այսպէս Ձեռ. "վերառաքեմք„ ուր ըլլալու էր "վերառաքեսցուք:„

[49] Յոյնը՝ "Աղօթք հաւատացելոց երկրորդ (εὐχὴ πιστῶν δευτέρα,) զոր ասէ քահանայն ի ծածուկ:„ Այս աղօթքն ալ Ոսկեբերանի պատարագէն չէ առնուած:

[50] Յոյնը՝ "ողորմութեամբ քով եւ գթութեամբ„ եւն:

[51] Յոյնը՝ "զմեղաւոր եւ անարժան ծառայքս քո„ եւն:

[52] Հայոյն յատկացութեան կերպ մըն է. յոյնը՝ κατενώπιον τῆς ἁγίας δόξης ("առաջի սրբոյ փառաց քոց.„) կրնար թարգմանիչը գրած ըլլալ՝ "առաջի երեսաց սրբոյ փառաց քոց,„ որ հայ լեզուի քերման ալ համեմատ է:

[53] "Կարդալ„ նախնեաց իմաստով է = ἐπικαλεῖσθαι. քիչ մ'եաքն "առաջարկել„ բառն կը հնչէ մեզի հոս եւ այս իմաստով, թէպէտ եւ յունարէնին προτίθεσθαι ըսելուն ճիշդ համապատասխանողն ըլլայ:

[54] Քարոզութեանս տեղ յոյնը հետեւեալ խրատագիրը կը դնէ՝ "Զկնի աղօթից քահանային՝ ասէ սարկաւագն զխաղաղականսն արտաքոյ բեմին, որպէս եւ յառաջնում նուագին: Եւ յետ խաղաղականացն ասէ քահանայն ի ձայն. Որպէս զի„ եւն: Աղօթքէն ետքը կ'աւելցնէ՝ "Դուռն. ամէն:„

Ը. [55] Սրբասացութիւնս բիւզանդեան Բարսղի մէջ չկայ, բայց կայ անոր տեղ սա խրատագիրն. "Քահանայն եւ սարկաւագն զայն ամենայն եւ ասէն ասեն եւ առնեն, որ ինչ ի Պատարագին Ոսկեբերանի:„ Այսպէս ալ է. հայուն հոս գրած Սրբասացութիւնը ("Որք զքերովբէից„ եւն.) կայ՝ քիչ տարբերութեամբ՝ Ոսկեբերանի քով (Daniel p. 350) սա խորագրով՝ "Եւ զկնի բարձրաբարբառ աղօթիցն (տես Ծան. 41) սաղմոսեն սաղմոսողք զՔերովբէական օրհնութիւնն.„ (τὸν Χερουβικὸν ὕμνον.) Քանի մը տարբերութիւնք կան երկուքին մէջ: Հայուն "Որք զքերովբէից խորհրդաբար կերպարանիմք զխորհուրդ„ ըսելն այնչափ լաւ չ'երեւար, ուր յոյնն ունի՝ οἱ τὰ Χερουβὶμ μυστικῶς εἰκονίζοντες ("որք զքերովբէիցն կերպարանս բերեմք խորհրդաբար.„) — "Զամենայն զկենցաղականս ի բաց դնելով հոգս„ = πᾶσαν τὴν βιωτικὴν ἀποθώμεθα μέριμναν (զամենայն հոգ կենաց) — "Եւ զհրեշտակացն հանդերձ զօրաց ընծայեալ բերելով զկարգն,„ կրնանք ըսել՝ համեմատելով յունարէնին հետ՝ սխալ թարգմանութիւն է, որուն աղբիւր եղած կ'երեւայ δορυφορούμενον (պատուապարեալ) բառը. Թարգմանն բարդութիւն համարած ըլլալու է δῶρον (ընծայ) եւ φέρω (բերել, կրել) բառերէն, ուստի՝ "ընծայեալ բերելով„ զկարգն: Յունարէնն ուրիշ բան կ'ուզէ հասկցընել՝ "...որպէս թէ զԹագաւորն ամենեցուն ընդունելոցիմք՝ զզօրագլուխն անտեսապէս ի հրեշտակական կարգաց„ (τὸν βασιλέα..., ταῖς ἀγγελικαῖς ἀοράτως δορυφορούμενον τάξεσιν.) — "Ալէլուիա„ երեք անգամ կը կրկնուի յունարէնին մէջ: — Խնդիր մը: Այս Սրբասացութեան գոյն յետնամուտ չէ՞ արդեօք, քանի որ՝ համեմատութեամբ միւս մասերուն՝ նաեւ երկրորդ թարգմանութեանս լեզուէն շատ տարբեր եւ ստորին է. եւ քանի որ բիւզանդեան բնագիրն ալ չունի հոս բացայայտ: Մեզ հաւանական կ'երեւայ սա հարց-

[illegible] 13

ուրհնութիւնս մատուցանեմք, զամենայն զկենցաղականս ի բաց դնելով զգործ, որպէս զի զԹագաւորն ամենեցուն ընդունիցիմք, եւ զհրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգ։ Ալէլուիա։

Եւ մինչ այս երգի՝ քահանայն հանդերձ ընծայիւքն ասէ զաղաւթս զայս։[56] Ոչ ոք արժանի է յըմբռնելոցս մարմնաւոր ախտիւք կամ ցանկութեամբ[57] մատչել ի սեղան քո կամ սպասաւորել արքունական փառաց քոց. զի պաշտել զքեզ մեծ եւ ահաւոր երկնաւոր զաւրութեանց իսկ է[58]։ Այլ սակայն վասն անչափ բարերարութեանդ քո անպարագրելի բանդ Հաւր եղեր մարդ[59], եւ քահանայապետ մեր երեւեցար[60]։ Եւ իբրեւ տէր ամենեցուն այսմ սպասաւորութեան եւ անարիւն զենման զքահանայութիւն աւանդեցեր մեզ. վասն զի դու ես Տէր, Աստուած մեր՝ որ տիրես երկնաւորաց եւ երկրաւորաց, որ ի վերայ քերովբէական աթոռոյ բազմիս, սերովբէից տէր եւ Թագաւոր Իսրայէլի, որ միայն սուրբ ես եւ ի սուրբս հանգուցեալ։ Աղաչեմ զքեզ այժմ միայն բարերար եւ հեշտալուր[61], նայեա յիս ի մեղուցեալ եւ յանպիտան ծառայս քո, եւ սրբեա զհոգի եւ զմիտս իմ յամենայն պղծութենէ չարին[62], եւ բաւականացո զիս զաւրութեամբ սուրբ Հոգւոյդ որ զգեցեալս եմ զքահանայական շնորհ կալ առաջի սրբոյ սեղանոյս եւ քահանայագործել զքո անարատ մարմինդ եւ զպատուական արիւնդ։ Քեզ խոնարհեցուցեալ զպարանոցս իմ[63] եւ մաղ-

||246 Ձեռ. (M) «բաւականացոյ։» ||247 Ձեռ. «սուրբ Հոգւոյ։» ||256 «Վե-

մէն պատասխանը, այն իմաստով որ Նոյն Թարգմանչէն ըլլալու չէ, բայց յոյն բնագրին մէջ անշուշտ կար հոս, ինչպէս յաջորդ խրատագիրն ալ կը վկայէ։

56 Ճիշդ այսպէս նաեւ յոյնը՝ Εὐχή, ἣν λέγει ὁ ἱερεὺς μυστικῶς, τοῦ χερουβικοῦ ᾀδομένου. Աղօթքը Ոսկեբերանի Պատարագէն է. (Daniel, p. 351). Մեր այժմու պատարագին մէջ ունեցած ձեւն ալ քանի մ'աննշանակ տարբերութիւն միայն կը ցուցընէ. (տես Խորհրդատետր, էջ 34։)

57 «Ցանկութեամբ» նաեւ մեր սովորականին մէջ. յոյնը՝ ἡδοναῖς («ցանկութեամբք», բուն՝ հեշտութեամբք.) «յըմբռնելոցս» վայելուչ եւ հնագոյն լեզուի ասութեանց մին է որոնք նաեւ լեզուի անկածութեան դարերու մէջ ալ բոլորովին չեն դադրիր հոս հոն երեւալէն, յոյնը՝ συνδεδεμένων (շաղկապելոցս)։ «Մատչել ի սեղան քո» պայծառ բացայայտութիւն է յունականին պարզ προσέρχεσθαι (մատչել) բառին՝ բայց «սպասաւորել արքունական փառաց քոց» արդէն չեղուած է. եթէ վստահինք յոյն բնագրին՝ ἢ λειτουγεῖν σοι, βασιλεῦ τῆς δόξης («կամ սպասաւորել քեզ, Թագաւոր փառաց։»)

58 Ըստ յոյն բնագրին՝ այսպէս բաժնելու է այս խօսքը՝ «Քանզի պաշտել զքեզ մեծ [է], եւ ահաւոր՝ երկնաւոր զօրութեանց իսկ։»

59 Յոյն՝ «Սակայն վասն անճառ (ἄφατον) եւ անչափ մարդասիրութեանդ քո՝ առանց փոփոխութեան եւ այլայլելոյ (ἀτρέπτως καὶ ἀναλλοιώτως) եղեր մարդ» (ուստի չկայ՝ «անպարագրելի Բանդ Հօր։»)

60 Յոյնը՝ ἀρχιερεὺς ἡμῶν ἐχρημάτισας («քահանայապետ մեր անուանեցար։») — Յաջորդին մէջ յոյնը՝ «Զի դու ես միայն Տէր» եւն։

61 «Հեշտալուր» (— որ մեր սովորական պատարագին մէջ կը պակսի —) ըստ յունին՝ εὐήκοον (որ դիւրաւ լսէ։)

62 Յոյնը՝ ἀπὸ συνειδήσεως πονηρᾶς («յամենայն չար խղճէ մտաց.») — Քիչ մ'ետքը՝ «զքո սուրբ եւ անարատ մարմինդ» եւն։

63 Բառ մը կը պակսի հոս, ինչպէս «խոնարհեցուցեալ ի— մաղթեմ» ասութեան կերպն ալ կը ցուցընէ. ըստ յունին՝ «Զի քեզ աղօթեմ՝ խոնարհեցուցեալ զպարանոցս իմ, եւ մաղթեմ» եւն։ Յաջորդ «Տ՛ Տէրէ՛ր ղէս»՝ նոյնպէս թերի է. մեր սովորական պատարագին մէջ աւելի ուղիղ ընթերցուածը պահուած է՝ ըստ յունին, այսինքն՝ «մի՛ դարձուցաներ... եւ Տ՛ Տէրէ՛ր ղէս ի ծառայէս քոց» եւն։

թեմ, մի մերժեր զիս եւ մի դարձուցաներ զերեսս քո յինէն. այլ արժանի արա մատուցանել քեզ զընծայս զայս յինէն ի մեղուցելոյ եւ յանպիտան[64] ծառայէս քումմէ։ Վասն զի դու ես որ մատուցանես եւ մատչիս եւ ընդունիս եւ տաս, Քրիստոս Աստուած մեր։ Եւ քեզ փառս վերառաքեմք հանդերձ անսկիզբն քո Հարբդ եւ ամենասուրբ[65] Հոգւովդ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

*Եւ ընծայքն վերաբերին ի սեղանն, եւ քահանայն լուանայ զձեռսն ասելով.* Լուացայց սրբութեամբ զձեռս[66]։ *Սարկաւագն քարոզէ.*[67] Կատարեսցուք զաղաչանս մեր Տեառն՝ զՏէր աղաչեսցուք։ *Ժողով.* Տէր ողորմեա։ [*Սար.*] Որպէս զի լի են երկինք եւ երկիր փառաւք նորա զՏէր աղաչեսցուք։ — Վասն առաջադրեալ պատուական ընծայիցս Տեառն Աստուծոյ մերոյ՝ զՏէր աղաչեսցուք։ — Վասն սուրբ տանս այսմիկ եւ որք հաւատով եւ երկիւղիւ մտանեն ի սմա, զՏէր աղաչեսցուք։ — Վասն փրկելոյ զմեզ յամենայն նեղութենէ, ի բարկութենէ եւ ի վտանգէ՝ զՏէր աղաչեսցուք։

---

## Բ. ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

### ՅԱՌԱՋԲԵՐՈՒԹԻՒՆ

Ա. — *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ։*[68] Տէր Աստուած մեր որ ստացեր զմեզ եւ ածեր ի կենդանութիւն, եւ ցուցեր մեզ ճանապարհ փրկութեան, եւ զերկնային խորհրդոյ քոց յայտնութիւն։[69] Քանզի դու ես որ

---

րաբերին„ բառին վրայ գրուած էր ի Չեռ. "նայ„, որով եղած է "վերանայ բերին։„ — Չեռ. "Լուայ„ գրուած էր եւ վրան աւելցուած "նա„ վանկը։

64 Յոյնն՝ "անարժան„ (ἀναξίου δούλου)։

65 Յոյնը՝ "ամենասուրբ եւ բարի եւ կենդանարար Հոգւովդ քով„ եւն։

66 Այս կտորը հոս չկայ. (— ընծայից վերաբերութեան յիշատակութիւնն յաջորդ աղօթքին սկիզբն է. —) ասոր տեղ Բիւզանդեան Բարսղի օրինակք կ'ըսեն՝ "Աստէն Եւ քահանայն Եւ սարկաւագն զայն ամենայն առնեն եւ ասեն, որ ինչ ի Պատարագին Ոսկեբերանի։ Եւ իբրեւ կատարին աղօթքն եւ մեծ Մուտքն (աղօթք մտից), գայ սարկաւագն ի սովորեալ տեղի իւր եւ ասէ. Կատարեսցուք„ եւն։

67 Յոյնը հոս (Բարսղի բիւզանդեան օրինակին մէջ) քարոզութեանս երկրորդ խօսքը ունի, միւսներն ալ համառօտած է, այսպէս՝ "Կատարեսցուք զաղաչանս մեր Տեառն։ Վասն առաջադրեալ պատուական ընծայիցս։ Վասն սրբոյ տանս այսորիկ։ Վասն փրկելոյ զմեզ։„ Ասով կ'աւարտի Նախերգանքը։

Բ. ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ։ Ասկէ սկսեալ տես վերը՝ էջ 120 եւն, թէ հին հայ բնագիրն, թէ յոյն բիւզանդեան օրինակն եւ թէ Յարգ. Հեղինակին ծանօթութիւնքն, ուր ամէն կարեւոր կէտերը ուրիշ պատարագաց համեմատութեանց մէջ շօշափուած են։ Այս մասն բուն Բարսղինն է՝ ճոխացեալ բիւզանդեան յաւելուածներով։

Ա. 68 "Յառաջբերութիւն„ խորագիրը գրինք անոր համար, որ յոյնն ալ Εὐχὴ προσκομιδῆς (աղօթք յառաջաբերութեան) կը կոչէ առաջին աղօթքս խրատագրին մէջ նշանակելով՝ "Աղօթք յառաջաբերութեան՝ յետ դնելոյ աստուածային նուիրաց ի սուրբ սեղանի, զոր ասէ քահանայն ի ծածուկ։„ Այս աղօթքն Ս. Յակոբայ ընծայուած Պատարագին մէջն ալ կայ. (Daniel, p. 105.)

69 Կը պակսի բայը՝ "...զյայտնութիւն շնորհեսցես„. (ὁ χαρισάμενος.)

եղեր[70] զմեզ ի սպասաւորութիւնս յայս զաւրութեամբ Հոգւոյդ քո սրբոյ. արդ բարեհաճեցիր եւ այժմ, Տէր, լինել մեզ սպասաւորս քոյոյ[71] ուխտիս եւ պաշտաւնեայ սրբոյ քո խորհրդոյս: Ընկալ զմեզ զմերձաւորեալքս սրբոյ քում սեղանոյս ըստ բազում գթութեանդ քում. զի եղիցուք արժանի մատուցանել քեզ զբանաւոր պատարագս զայս եւ զանարիւն զենումնս[72] վասն մեղաց մերոց եւ ժողովրդեանս անգիտութեան[73]. զորս առ ընկալ Տէր ի քո սուրբ, յերկնային եւ յիմանալի սեղանդ ի հոտ անուշից,[74] եւ փոխանակ առաքեա ի մեզ զշնորհս Հոգւոյդ սրբոյ: Վերանայեաց[75] ի մեզ Տէր եւ ի պաշտաւնս յայս, եւ ընկալ զսա որպէս զԱբէլի զընծայսն, զՆոյի զենմունսն, զԱբրահամու զողջակէզսն,[76] զՄովսէսի եւ զԱհարոնի զքահանայութիւնսն, զՍամուէլի զխաղաղականսն. եւ որպէս ընկալար ի ձեռաց սրբոց առաքելոցն զճշմարիտ պաշտաւնս զայս. դու ինքնին Տէր ընկալ եւ ի ձեռաց մերոց մեղաւորացս զպատարագս զայս քաղցրութեամբդ քով:[77] Զի արժանի[78] լիցուք սպասաւորել անբիծ սրտիւ սրբոյ քում սեղանոյս, եւ գտցուք վարձս հատուցման ընդ քոց արդար եւ հաւատարիմ տնտեսացն: Բարեխաւսութեամբ ամենասրբուհոյ Աստուածածնին եւ ամենայն սրբոց քոց:[79]

---

‖270 Այսպէս ճշդիւ Զեռ. (M) «բարեհաճեցիր» անյաջող ձեւն։ ‖272 Զեռ. «եղիցուք արժան է մատուցանել։» ‖276 Զեռ. «վերայնայեաց։» ‖286 Զեռ.

70 Յոյնը՝ «Եւ եդիր զմեզ... զօրութեամբ ամենասուրբ Հոգւոյդ» եւն։ Շատ խորթ է քիչ մ'եաքն «բարեհաճեցիր». (εὐδόκησον)։

71 Թէեւ երկու ձեռագիրներն ալ «քոյոյ» կարդան՝ կը կասկածինք ուղղութեամբ աւանդուած ըլլալուն. պէտք ըլլայ՝ «Նորոյ ուխտի քո» (καινῆς σου διαθήκης. հին հայն՝ «Նորոց կտակարանացս».) իսկ յաջորդն ըստ յունին՝ «անարատ խորհրդոց քոց։»

72 Հնագոյն եւ ուղղագոյն է հայոյն ըսելը՝ «զբանաւոր պատարագս եւ զանարիւն զենումնս» ուր ասորական յոյնն է δῶρά τε καὶ θυσίας (զընծայս եւ զզենմունս։) Այսպէս են հոս թէ՛ Բարբերինեան օրինակը եւ թէ՛ հին հայ թարգմանութիւնը. (տես էջ 122—3։)

73 Բիւզանդեան յոյնը կը յաւելու հոս։ «Տուր մեզ Տէր՝ ամենայն երկիւղիւ եւ սուրբ մտօք խղճի յառաջբերել քեզ զհոգեւոր զայս եւ զանարիւն զենումն,» զոր այստեղ եւ այս ձեւին մէջ չունի հայն՝ Բարբերինեան Օրինակին եւ հին հայոյն համաձայն։

74 Այսպէս նաեւ Բարբ. իսկ բիւզանդեանն «ի հոտ հոգեւոր անուշից». նոյնպէս քիչ մ'եաքն «Հոգւոյդ սրբոյ» ըստ Բարբ. (բիւզանդեանն՝ «ամենասուրբ»)։

75 Յունաբան կազմութիւն համեմատ յունին ἐπίβλεψον։

76 Շատ լաւ է այս ընթերցումը, զոր ունի միայն Բարբ. իսկ «զՍամուէլի խաղաղականսն» բառերէն եաքը կը պակսին հայոյն մէջ աս խօսքերը՝ «Դաւթի զզղջումն, Զաքարիայի զխունկս։»

77 Բիւզանդեանը կը կցէ՝ «եւ տուր լինել պաշտամանս մեր ընդունելի, սրբեալ Հոգւովդ սրբովդ, ի թողութիւն յանցանաց մեր եւ ժողովրդեան անգիտութեան եւ ի հանգիստ հանգուցեալ հոգւոց,» Հայը չունի այս ամէնը՝ Բարբերինեանին հետ։

78 Բիւզանդեանն՝ «Զի արժանի լիցուք եւ մեք խոնարհ եւ մեղաւոր եւ անարժան ծառայք քո,» չունին զասոնք հայն եւ Բարբերինեանը։ Յաջորդ «անբիծ սրտիւ» աւելի նման է Բարբ. ἀμέμπτως քան ասորականը՝ ἀδόλως։

79 «Բարեխօսութեամբ» եւն չունի յոյնը. ասոր տեղ՝ «եւ գտցուք շնորհս եւ ողորմութիւն (— չիք ի Բարբ. —) յաւուր ահեղ (չիք Բարբ.) արդար եւ բարի (չիք Բարբ.) հատուցման քո։ Ի յոյն։ Գթութեամբք միածնի Որդւոյ քո» եւն. տես քիչ մ'եաքը։ Չենք կարծեր որ հոս հայն անաղարտ հասած ըլլայ մեզի։

*Սարկաւագն քարոզէ.*[80] Ընկալ, կեցո եւ ողորմեա։ *Ժողով.* Տէր ողորմեա։ [*Սար.*] Զժամ պատարագիս եւ զառաջիկայ աւրս խաղաղութեամբ եւ առանց մեղաց կատարեալ ի Տեառնէ խնդրեսցուք։ *Ժողով.* Շնորհեա Տէր։ [*Սար.*] Զհրեշտակ խաղաղութեան հաւատարիմ պահապան անձանց մերոց՝ ի Տեառնէ [խնդրեսցուք]։ — Զքաւութիւն եւ զթողութիւն յանցանաց մերոց՝ ի Տեառնէ։ — Զսրբոյ խաչին ամենայաղթ զաւրութիւն յաւգնականութիւն անձանց մերոց՝ ի Տեառնէ։ — Զբարին եւ զաւգտակարն անձանց մերոց եւ զխաղաղութիւն աշխարհի՝ ի Տեառնէ։ — Զմնացուածս ժամանակաց մերոց խաղաղութեամբ կատարել՝ ի Տեառնէ։ — Զքրիստոնէական կատարումն կենաց մերոց անվիշտս եւ անամաւթս եւ բարի պատասխանատուութեամբ կալ առաջի ահեղ բեմին՝ ի Տեառնէ։ *Ժողով.* Քեզ Տեառն յանձն։

*Քահանայն ի ձայն.* Վասն գթութեանց միածնի Որդւոյ քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում աւրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ ամենասուրբ եւ բարերար[81] քո Հոգւովդ. այժմ։ *Ժողով.* Ամէն։ *Քահանայն,* Խաղաղութիւն ամենեցուն։ [*Ժողով.*] Եւ հոգւոյդ քում։[82]

Բ. — *Սար.* Ողջունեսցուք[83] զմիմեանս։ *Ու ողջունեն զսեղանն եւ զինբեանս: Սար.* Զգրունս, զգրունս։ Պրաւսխումէն։

Հաւատամք ի մի Աստուած Հայր ամե[նակալ, եւն։]

*Զկնի սարկաւագն յամբոնն վերաձայնէ եւ վերացուցանէ զլայնափորոնն եւ ասէ.* Կացցուք բարիոք։ Կացցուք երկիւղիւ։ Պռաւսխումէն ի սուրբ վերա-

“զառաջիկայ աւր։” ‖[302] Ձեռ. (M) “պռաւսխամէն.” հոս եւ ետքն (տող 305)։ ‖[303] Ձեռ. “Հաւատամք մի Աստուած։” ‖[306] Ձեռ. “վերայերութիւնս։”

[80] Ամբողջ այս քարոզութեան մասերը չունի Բարբերինեանն. իսկ Բարսղի բիւզանդեանն այսպէս կը համառօտէ. “Սարկաւագն որպէս ի Պատարագին՝ Ոսկեբերանի։ Ընկալ, կեցո, ողորմեա։ Զառաջիկայ աւրս կատարեալ, սուրբ։ Զհրեշտակ խաղաղութեան, հաւատարիմ պահապան։ Զթողութիւն եւ զքաւութիւն մեղաց։ Զբարին եւ զաւգտակարն անձանց։ Զմնացուած ժամանակի կենաց։ Զքրիստոնէական կատարումն կենաց։ Զամենասրբուհի, զանարատ։” Տես այս քարոզութիւնքը լիովին Ոսկեբերանի պատարագին մէջ (Daniel, p 355.) Տարբերութիւններ բաւական կան. իսկ ժողովրդեան պատասխանները չեն տեսնուիր յոյն բնագրին մէջ։

[81] Յոյնը՝ “բարի եւ կենդանարար։”

[82] Միայն Բարբ. ունի հոս՝ “Եւ ընդ հոգւոյդ քում” հայոյն համաձայն։

Բ. [83] “Ողջունեսցուք զմիմեանս = ἀγαπήσωμεν ἀλλήλους. այսչափ նաեւ Բարբ. (սովորականը կը կցէ՝ «զի միաբանութեամբ խոստովան լիցուք։) Աւելի ետքն ալ մինչ. հայոյն պէս ունի Բարբ. “Եւ զկնի զՈղջոյնն տալոյ ասէ. Զդրունս զդրունս. պրոսխումէն։ Ժողովուրդն զՀաւատամքն. եւ յետ “Հաւատամք” աղօթիցն՝ ասէ սարկաւագն Կացցուք բարիոք։ Քահ. Շնորհքն եւն։ — Բոլորովին տարբեր է սովորական յոյն բնագիրը. նախ “Ողջոյն տուքին կը կցէ՝ “Դրան. Զհայր եւ զՈրդի եւ զՍուրբ Հոգին, զԵրրորդութիւնն համագոյ եւ անբաժան։ Քահանայն խոնարհի երեքս ասելով ի ծածուկ։ Սիրեմ զքեզ, Տէր, զօրութիւն իմ, Տէր հաստատութիւն իմ եւ ապաւէն իմ. Երեքս։ Եւ [illegible] երեքս եւ կցէ ի ձայն բարձր. Զդրունս զդրունս. իմաստութեամբ միտ դիցուք (սոփիա պրոսխումէն։) Դրան զՀաւատամքն, եւ յետ [illegible] Կացցուք բարւոք” եւն։ Վերջինս՝ զոր համառօտութեամբ ունէր Բարբ., հայն եւ բիւզանդեանն լիովին ունին։

ցուցանելով,[97] յաւիտեանս ի Հաւրէդ ծնեալ, իմաստութիւն, կենդանութիւն, լոյս ճշմարտութեան[98], յորմէ Հոգին սուրբ երեւեցաւ,[99] ճշմարտապէս Հոգի, որդեգրութեան շնորհք, առհաւատչեայ հանդերձեալ ժառանգութեան, առաջնապտուղ[100] յաւիտենական կենացն. կենդանական զաւրութիւն.[101] աղբիւր սրբութեան, յորմէ ամենայն արարածք բանականք եւ իմանալիք զաւրանան՝ զքեզ պաշտեն եւ քեզ մշտնջենաւորիդ մատուցանեն զերկրպագութիւն եւ զփառաբանութիւն.[102] զի համաւրէն ամենեքեանս ծառայք քո եմք եւ գործ ձեռաց քոց։ Զքեզ պաշտեն[103] հրեշտակք եւ հրեշտակապետք, իշխանութիւնք եւ զաւրութիւնք, բազմատեսիլ քերովբէք, եւ վեցթեւեան սերովբէքն շուրջ կալով զքեւ, վեց թեւք միոյ եւ վեց թեւք միոյ. երկու թեւաւքն ծածկէին զոտս, եւ երկու թեւաւքն զերեսս, եւ երկու թեւաւքն թռուցեալ աղաղակեն մի առ մի անդադար բերանով անհանգիստ աստուածաբանութեամբ[104] աւրհնեն զքեզ անպարագիրդ Աստուած, [— ի ձայն —] զվերայաղթական աւրհնութիւնս երգելով, գոչելով, աղաղակելով եւ ասելով. [— ժողովն. —] Սուրբ սուրբ սուրբ Տէր զաւրութեանց, լի են երկինք եւ երկիր փառաւք քո, աւրհնութիւն ի բարձունս աւրհնեալ որ եկիր եւ գալոց ես անուամբ Տեառն, ովսաննա ի բարձունս։[105]

---

Ձեռ. "առհաւատչեա։" ‖357 Ձեռ. "զի համաւրէն ամենայնքս"։ ‖360 Ձեռ. (M) "քէրովբէքն ...սէրովբէքն։" ‖364 Ձեռ. (M) "զվերայ յաղթական...։"

97 Ի՞նչ բան՝ "յինքեան ցուցանելով." արդէն խօսքին անկապ ձեւը կը ցուցնէ որ բանի մը բառ դուրս ձգուած է օրինակներէն։ Այսպէս ալ է. յունարէնին համեմատ՝ պէտք է լրացնել՝ "յինքեան ցուցանելով զՀայր. Բան ինքնին, Աստուած ճշմարիտ՝ յառաջ քան զյաւիտեանս ծնեալ իմաստութիւն"։ Եւ Վերջինն ունի այժմու հայն ալ ("ծնեալ" իրեն յատուկ է։) Բայց. եւ հին հայն այսպէս կը բաժնէ վերջին բառերը՝ "Աստուած ճշմարիտ. յառաջ քան զյաւիտեանս իմաստութիւն։"

98 "Լոյս ճշմարտութեան" = յոյն եւ հին հայ թարգմանութեան "լոյս ճշմարիտ". բիւզանդեանն ունի նախ՝ "կեանք (= "կենդանութիւն"), օրհնութիւն, զօրութիւն, լոյս" եւն։

99 "Երեւեցաւ" = ἐξεφάνη, հին հայն՝ "յայտնեցաւ։" — Յաջորդ "ճշմարտապէս Հոգի" հայոյն յատուկ է. յոյն եւ այլք՝ "Հոգի ճշմարտութեան։"

100 Ընտիր ընթերցուած մըն է՝ "առաջնապտուղ" (ἀπαρχή, երախայրիք. հին հայն՝ լոկ "պտուղ") յաւիտենական կենաց։ "Կենաց" շեղում մըն է, լաւագոյնն է հին հայոյն՝ "բարութեանցն" = ἀγαθῶν։

101 Յոյնն եւ հին հայն՝ "կենդանարար (ζωοποιός) զօրութիւն։"

102 Ուղղագոյն էր ըսել՝ "...զքեզ պաշտել... մատուցանել"։ Ըստ յոյն բնագրին եւ հին հայոյն "մշտնջենաւորէդ" չէ հարազատ, այլ "մշտնջենաւոր փառաբանութիւն." (երկրորդ թարգմանչին յատուկ է "երկրպագութիւն։")

— "Եւ գործք ձեռաց քոց" երաշխաւորեալ չէ բնագրէն եւ հին հայ թարգմանութենէն։

103 "Պաշտեն." նման հին հայը՝ "երկիր պագանեն." իսկ յոյն բնագիրը՝ αἰνοῦσιν (գովեն։) Երեք բառ կը պակսի "Հրեշտակապետք" բառէն ետքը, այսինքն՝ "աթոռք, տէրութիւնք, պետութիւնք." — բայց ի "տէրութիւնք" բառէն՝ միւսները չունի հին հայն ալ։

104 "Անհանգիստ աստուածաբանութեամբ" = Բարբ. ἀσιγήτοις (անլռելի) θεολογίαις, միւս օրինակները δοξολογίαις (փառաբանութեամբք։) "Աւրհնեն զքեզ անպարագիրդ Աստուած" չկայ յունարէնին մէջ. ընդհակառակն փակագծեալ "ի ձայն" եւ "ժողովուրդն" մենք աւելցուցինք ըստ յունին եւ հին հայ թարգմանութեան։ Երկրորդ թարգմանութեանս մէջ՝ եթէ ձեռագրաց վստահինք՝ ամբողջը միապաղաղ աղօթք մըն է որ քահանայէն կ'ըսուի։

105 Յոյն բիւզանդեանը հոս հետեւեալ խրատգիրը կ'աւելցնէ. "Աստէն սարկաւագն զայն ամենայն առնէ, որ ինչ ի Պատարագին Ոսկե-

## Կ Ա Ն Ո Ն

Գ․ *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ։*[106] *Սուրբ ես ճշմարտապէս եւ ամենասուրբ, եւ ոչ գոյ չափ մեծվայելչութեան քո եւ սրբութեան․ եւ սուրբ ես յամենայն ի գործս քո, զի արդարութեամբ են դատաստանք քո, եւ ճշմարիտ իրաւամբք ածեր զայս ամենայն ի վերայ մեր․*[107] *քանզի հող առեալ յերկրէ՝ ստեղծեր զմարդն, եւ պատկերաւդ քո աստուածապատուեցեր*[108] *զնա, եւ եդիր ի դրախտին փափկութեան՝ յանմահութիւն լինել, ի յաւելումն յաւիտենական կենացն եւ բարեացն պահեալ խոստացար նմա զպատուիրանս քո*[109]*․ այլ ստունգանելով քեզ ճշմարիտ Աստուծոյ որ ստացար*[110] *զնա, եւ ընդ պատրանաւք եղեալ աւձին՝ մեռանելով նորա վիրաւքն եւ իւր յանցանաւքն,*[111] *արտաքսահմանեցեր զնա արդար դատաստանաւդ քո, հաներ ի դրախտէն կենաց յաշխարհս յայս եւ դարձուցեր զնա ի հող յորմէ առաւ իսկ, տնաւրինելով նորա վերածնութիւն փրկութեան նովիմբ Քրիստոսիւ քով։*[112] *Քանզի ոչ դարձար*[113]*, բարերար, ի ստեղծուածոյ քումմէ ի սպառ՝*

‖370 Աւկէ սկսեալ ծանօթ է L մեծ մասամբ։ ‖371 L "ոչ գոյ չափ մեծութեան քո։" ‖378 L "պատրանօք... օձին՝ մեռանելովն։" ‖380 L "ի դրախտէն։" ‖381 L "տնօրինելով նորա վերածնութիւն նովիմբ..."․ M ունէր "բերանի։" Թարգմանիչն այս յաւելուածը գտած ըլլալու չէ իւր բնագրին մէջ։

106 Սկիզբը յոյն օրինակները սա նախադասութիւնն ունին. "Ընդ երջանիկ զօրութիւնսս այսոսիկ, Տէր մարդասէր, եւ մեք մեղաւորքս գոչեմք եւ ասեմք. Սուրբ" եւն։ Այս ներածութիւնը չունի նաեւ հին հայերէն թարգմանութիւնը, որ քիչ մ'ետքն յունարէնին համաձայն ունի սա ընթերցուածը՝ "...մեծվայելչութեան սրբութեանդ քո։"

107 Յոյնը՝ "Զի արդարութեամբ եւ ճշմարիտ դատաստանաւ ածեր զայս ամենայն ի վերայ մեր։" Երկրորդ թարգմանիչն անշուշտ աչքին առջեւ ունէր հին թարգմանութիւնն, ինչպէս (հոս եւ նաեւ այլուր) ասութեան կերպերը կը ցուցընեն։ Հմմտ. "արդարութեամբ են դատաստանք եւ ճշմարիտ իրաւամբք" եւն հոս, իսկ հնոյն քով "արդարութեամբ եւ իրաւամբք ճշմարտութեան" եւ նմաններ։

108 Գրչաց սխալմունք է անշուշտ, եւ ուղղելի յունարէնին համեմատ՝ "եւ պատկերաւդ քո, Աստուած, պատուեցեր զնա" (εἰκόνι τῇ σῇ ὁ θεὸς τιμήσας αὐτόν, հին հայն՝ "ի պատկեր Աստուծոյ պատուեցեր զնա։")

109 Ամբողջն աղաւաղեալ է. յունականն է՝ "եւ եդիր ի դրախտին փափկութեան, զանմահութիւն կենաց եւ զհանգիստ (զվայելումն) յաւիտենական բարեացն՝ ի պահել զպատուիրանս քո՝ խոստացար նմա։" Սակայն կ'երեւայ թէ թարգմանչին գրչէն ալ բոլորովին պարզ չէր ելած այս խօսքն, որ յայտնապէս ազդուած է հին թարգմանութեան ասութեան կերպէն՝ "եդիր զնա ի դրախտին փափկութեան՝ ի կեանս անմահականս եւ ի հանգիստ (ἀπόλαυσις, վայելք, նաեւ հանգիստ,) բարութեան, եւ ի պահել պատուիրանացն խոստացարնմա տալ զառաւել փառս։" (Տես վերն՝ էջ 131, եւ Ծան. 39։)

110 Յոյնը τοῦ κτίσαντος αὐτόν ("որ ստեղծեր զնա"), հայերէն թարգմանութեանց մէջ յաճախ տեսնուող անճշդութիւն մ'որուն պատճառն է յունարէն նմանահնչիւն ածանցմանց հոմութիւնը (κτάομαι ստանալ, κτίζω ստեղծել, եւ իրենց ածանցմունքն։)

111 "Նորա վիրաւքն եւ իւր յանցանօքն․" յոյնը պարզապէս παραπτώμασιν ("...յանցանօք։") — Յաջորդին մէջ ալ "արտաքսահմանեցեր... հաներ" = յոյն միայն ἐξώρισας. Աւելի է հայոյն մէջ նաեւ (ի դրախտէն) "կենաց"։

112 Յոյնը՝ "տնօրինելով (οἰκονομῶν) նմա զփրկութիւն վերստին ծննդեան (παλιγγενεσίας, հայն ճշդիւ "վերածնութիւն") նովիմբ իսկ Քրիստոսիւ քով։"

113. Հոս անյաջող փոխադրութիւն մըն է այս խօսքը. յոյն բնագիրն է՝ οὐ γὰρ ἀπεστράφης τὸ πλάσμα σου εἰς τέλος, զոր հին հայը շատ աւելի լաւ եւ յաջող կերպով այսպէս բացատրեր է՝ "ոչ թողեր ի ձեռանէ զստեղծուածս քո։"

զոր ստեղծեր, եւ ոչ մոռացար զգործս ձեռաց քոց. այլ այց արարեր բազում յեղանակաւք[114] վասն բազում ողորմութեան եւ գթութեան քո, մարդասէր Տէր: Մարգարէս առաքեցեր. արարեր զաւրութիւնս սրբաւք քո, որք ըստ իւրաքանչիւր ազգաց բարեհաճոյացան քեզ. խաւսեցար ընդ մեզ բերանովք ծառայից քոց մարգարէիցն՝ յառաջապատմեալ մեզ զհանդերձեալ լինել փրկութիւն[115]. աւրէնս ետուր յաւգնականութիւն. հրեշտակս կարգեցեր ի սպասաւորութիւն: Իսկ իբրեւ եկն լրումն ժամանակաց՝ խաւսեցար ընդ մեզ նովիմբ Որդւովն քո, որով եւ զյաւիտեանս արարեր. որ է լոյս փառաց եւ նկարագիր էութեան քո,[116] որ կրէ զամենայն բանիւ զաւրութեան իւրոյ, ոչ յափշտակութիւն համարեցաւ քեզ լինել հաւասար՝ Աստուծոյ եւ Հաւր. այլ Աստուած գոլով նախ քան զյաւիտեանս՝ ի յերկրի երեւեցաւ եւ ընդ մարդկան շրջեցաւ, ի սրբոյ կուսէն մարմնացեալ ի Մարիամայ Աստուածածնէն.[117] խոնարհեցոյց զինքն՝ զկերպարանս ծառայի առեալ, ի նմանութիւն մարդկան եղեալ՝ չարչարակից եղեւ մարմնոյ տառապանաց մերոց.[118] զի զմեզ կերպարանակիցս արասցէ պատկերի մարմնոյ փառաց իւրոյ: Քանզի մարդով մեղք յաշխարհ մտին, եւ ի մեղաց անտի մահ. այլ բարեհաճեցար[119] ընդ միածնի Որդւոյ քո որ ի ծոց քո Հաւր եւ Աստուծոյ, որ եղեւ մարդ ի կնոջէ ի սրբոյ Աստուածածնէն եւ ի միշտ կուսէն Մարիամայ, եղեւ ընդ աւրինաւք, դատապարտեաց զմեղս ի մարմնի իւրում. զի որ յԱդամայ մեռեալքն էին՝ կենդանացան Որդւովն քո Քրիստոսիւ. եւ շրջելով յաշխարհիս յայս-

բան "նովիմբք Քրիստոսիւ...:" ||386 L "խօսեցար": ||387 L չաւ եւս "յառաջապատմել զհանդերձեալ լինել փրկութիւնն, օրէնս ետուր..." M... "...փրկութիւն աւրէնս. ետուր յաւգնականութիւն" եւն: L այս տեղերը կը կարդայ իբր սովորութեան հակառակ "յեղանակօք," "յօգնականութիւն" եւ "խօսեցար ընդ մեզ նովիմբ...": ||391 L "զօրութեան:" ||394 L "ի սրբոյ կուսէն... ի Մարիամու յԱստուածածնէն:" ||398 L "այլ բարեհաճոյացար ընդ միածնի Որդւոյ քո:" ||400 L "ընդ աւրինօք:" ||402 L "կենդանա-

114 "Բազում յեղանակաւք," ճիշդ մեր արդի "շատ եղանակաւ," առութիւնը կը ներկայացնէ. յոյն՝ πολυτρόπως: Քիչ մ'ետքը "մարդասէր Տէր," յունարէնին մէջ չկայ:

115 Բոլորովին յունաբանութիւն է՝ "յառաջապատմեալ մեզ զհանդերձեալ լինել փրկութիւն" = προκαταγγέλλων ἡμῖν τὴν μέλλουσαν ἔσεσθαι σωτηρίαν. — Քիչ մ'ետքը "հրեշտակս կարգեցեր ի սպասաւորութիւն." յոյնը՝ φύλακας ("պահապանս." հին հայն՝ "վերակացուս:")

116 "Որ է լոյս (ἀπαύγασμα, ճառագայթ) փառաց եւ նկարագիր էութեան քո (χαρακτὴρ τῆς ὑποστάσεως)" բառ առ բառ հին թարգմանութենէն, նոյնպէս ինչ ինչ բան յաջորդաց մէջ. (տես հին թրգմ. Ծան. 48:)

117 "Ի Մարեմայ Աստուածածնէն," չունի յոյնը եւ հին հայը. նոր մեկնաբանութիւն մ'անշուշտ:

118 Յոյնը եւ հին հայն՝ միայն "եղեւ ի նմանութիւն մարմնոյ տկարութեանս մերոյ." (յոյնը բուն՝ "կերպարանակից եղեւ մարմնոյ խոնարհութեան մերոյ:") — Զունին առանց քիչ մ'ետքն "պատկերի մարմնոյ փառաց," այլ "պատկերի փառաց:"

119 Ըստ յունին՝ "բարեհաճեցաւ Միածնին որդի քո," եւն: Հին հայը քիչ մը նման նոր թարգմանութեան: — Քիչ մ'ետքն՝ "շրջելով յաշխարհիս" = ἐμπολιτευσάμενος τῷ κόσμῳ, զոր հին թարգմանութիւնն այնպէս բացատրեր է ըստ բերման հին լեզուին՝ "վարեցաւ յաշխարհիս". (տես հոն՝ Ծան. 58:)

միկ՝ տուեալ պատուիրանս փրկութեան՝ ի բաց արար զմեզ ի մոլորութենէ կռոցն, եւ ուսոյց զմեզ ի գիտութիւն ճշմարտի Աստուծոյ եւ Հաւրդ. ստացաւ զմեզ իւր ժողովուրդ սեպհական, թագաւորութիւն, քահանայութիւն,[120] ազգ սուրբ. մաքրեաց զմեզ ջրով եւ հոգւով սրբով. ետ զինքն փոխանակ մահու, որով ըմբռնեալն էաք եւ վաճառեալ ընդ նզովիւք։[121] Եւ իջեալ ի ձեռն խաչի[122] ի դժոխս, զի կատարեսցէ ինքեամբ զամենայն, եւ լոյծ զերկունս մահու. եւ յարուցեալ յերրորդ աւուր ճանապարհ արար ամենայն մարմնոյ գալ ի մեռելոցն յարութիւն։ Զի ոչ էր հնար իսկ ըմբռնել ընդ ապականութեամբ առաջնորդն[123] կենաց. եղեւ առաջին պտուղ ննջեցելոց, զի իցէ ինքն ամենայն յամենայնի յառաջացեալ. եւ յերկինս, նստաւ ընդ աջմէ մեծութեան քո ի բարձունս. որ եւ գալոց է հատուցանել ըստ իւրաքանչիւր գործոց։ Եթող մեզ զյիշատակս զայս փրկութեան իւրոյ չարչարանացն՝ զայսոսիկ զոր առաջի եդեալս եմք ըստ նորա պատուիրանացն։ Քանզի յորժամ հանդերձեալն էր գալ ի կամաւոր չարչարանսն եւ ի կենդանարար մահն,[124] ի գիշերին յորում մատնէր զինքն յաղագս աշխարհի կենաց, առեալ զհացն ի սուրբ յանարատ ձեռս իւր, վերացուցեալ[125] քեզ Աստուծոյ եւ Հաւր, գոհացաւ, աւրհնեաց, սրբեաց, բեկեալ ետ իւրոց ընտրեալ աշակերտացն եւ առաքելոցն ասելով։

Ե. [Քահ.] ի ձայն.[126] Առէք կերայք, այս է մարմին իմ, որ վասն ձեր բեկեալ ի թողութիւն մեղաց։ Ժողով. Ամէն։

---

ցան Որդւովք քո Քրիստոսիւ։" ‖[406] L "Հոգւով սրբով։" ‖[407] L "... որով ըմբռնեալն էաք եւ վաճառեալ մեղօք." բայց լուսանցքին վրայ՝ "նզովիւք։" ‖[408] L "ի դըժոխս։" ‖[411] L "...ննջեցելոց. անդրանիկ ի մեռելոց, զի իցէ...։" ‖[414] L "եթող մեզ յիշատակ փրկական իւրոց չարչարանացն, զայսոսիկ զորս առաջի եդեալ եմք..." (M "... եդեալս եմ։") ‖[418] L "քեզ Աստուծոյ եւ Հօր." (յետոյ "դ" մ'աւելցուած՝ "Հօրդ.") ‖[419] L "օրհնեաց։" — L լաւ եւս "...ետ իւրոց ընտրեալ աշակերտացն եւ առաքելոցն ասելով." M չունի "եւ առաքելոցն։" ‖[420] L "Վերաձանէ քահանայն. Առէք...։" ‖[423] L չունի "ցած." այլ լաւ եւս

[120] "Ի թագաւորութիւն, քահանայութիւն" ճշգիւ հին թարգմանութեան համեմատ, ուր ամէն յոյն բնագիրք ունին՝ βασιλικὸν ἱεράτευμα ("յարքունական թագաւորութիւն։")

[121] Յոյնը՝ "...ընդ որով ըմբռնեալ էաք վաճառեալք մեղաց" (πεπραγμένοι ὑπὸ τὴν ἁμαρτίαν.) "վաճառեալ" չունի հին հայ թարգմանութիւնը։

[122] "Ի ձեռն խաչի" (διὰ τοῦ σταυροῦ) խորթ կը հնչէ. հին հայ թարգմանութիւնն ունի՝ "մահուամբ խաչի։" — "Ճանապարհ արար ամենայն մարմնոյ գալ ի մեռելոցն յարութիւն", բառական թարգմանութիւն յունին (ὁδοποιήσας ... τὴν ἐκ νεκρῶν ἀνάστασιν). "արար ճանապարհ" ունի նաեւ հին թարգմանութիւնը։

[123] "Առաջնորդ կենաց" (նոյնպէս հին հայն) կը համապատէ սովորական բիւզանդականաց τὸν ἀρχηγὸν τῆς ζωῆς ընթերցուածին, Բարք. ἀρχὸν (իշխան եւն։) — "Առաջին պտուղ" տես վերը Ծան. 100։

[124] Յոյնը լոկ՝ "...ի կամաւոր հռչակաւոր եւ կենդանարար մահն իւր" եւն։

[125] "Վերացուցեալ" = ἀναδείξας (հին թրգմ. "ցուցեալ". տես նոյն տեղն՝ Ծան. 75.)

Ե. [126] Հոս է խորագիրս նաեւ հին թարգմանութեան մէջ. յոյն բնագիրն "բեկեալ" բառէն եւքն անմիջապէս կը դնէ այսպէս՝ "Քահանայն խոնարհեցուցանէ զգլուխն, ամբառնայ զաջն իւր բարեպաշտութեամբ, եւ օրհնէ զսուրբ հացն ասելով ի ձայն բարձր. Ետ իւրոց սրբոց (— "ընտրեալ" հայը —) աշակերտաց" եւն։

[Քահ.] ցած.[127] Ըստ նմին աւրինակի եւ զբաժակն յետ ընթրեացն[128] առ[129] ասելով. — ի ձայն. — Արբէք ի սմանէ ամենեքեան, այս է արիւն իմ նորոյ ուխտի որ վասն ձեր եւ բազմաց հեղու ի թողութիւն մեղաց։ Ժողով. Ամէն։

Զ. Քահ.[130] Զայս արարէք առ իմոյ յիշատակի. քանիցս անգամ եթէ ուտիցէք զհացս զայս եւ զբաժակս ըմպիցէք, զմահ իմ պատմեցէք եւ զյարութիւն իմ խոստովանեսջիք։

Է. Արդ յիշելով եւ մեք[131] զփրկագործ զչարչարանսն, զկենդանատու զխաչելութիւնն, զերեքաւրեայ զթաղումն, զառ ի մեռելոց զյարութիւն, յերկինս զճանապարհորդելն, ընդ աջմէ Աստուծոյ եւ Հաւրդ վնստելն, զփառաւորեալ եւ զահաւոր զքանիչելի եւ զոսկալի միւսանգամ գալուստն։ — Ի ձայն. — Զքոյս ի քոյոց քեզ մատուցանեմք, ըստ ամենայնի եւ յաղագս ամենեցուն.

Ժողով. ասէ. Զքեզ աւրհնեմք, զքեզ գովեմք,[132] զքեզ բարեբանեմք, զքէն գոհանամք Տէր, եւ աղաչեմք զքեզ Աստուած մեր։

Ը. Քահանայն խոնարհի եւ աղաւթէ: Վասն այսորիկ, Տէր ամենայնի սուրբ,[133] եւ մեք մեղաւոր եւ անարժան ծառայքս քո, որք արժանաւորեցաք սպասաւոր լինել սրբոյ քում սեղանոյս, ոչ յաղագս արդարութեանց մերոց,

---

կը կցէ "Նմանապէս եւ զբաժակն է թերոյ ըրնոյ առեալ խառնեաց, գոհացաւ, օրհնեաց, ըրբեաց, ետ սրբոց իւրոց աշակերտացն եւ առաքելոցն ասելով. Արբէք...։„ L ուղղագրյնն է. M յետոյ համառօտուած։ ||[427] Միայն L ունի հոս "Քահ.„ խորագիրը։ ||[428] L "ըմպիցէք, զմահ իմ պատմեցէք.„ M ոչ ուղիղ՝ "պատմիցէք։„ ||[431] L "զերեքօրեայ ...զյարութիւնն...։„ ||[434] L չունի բուն բնքեան "ի ձայն Զքոյս ի քոյոց„ եւն կտորը, որ սակայն յետոյ լուսանցքի վրայ գրուած է։ — M "զքոյս ի քոց„ կը գրէ։ ||[436] L չունի "ասէ։„ — L "օրհնեմք... զքէն գոհանամք եւ աղաչեմք զքեզ Աստուած մեր.„ ուստի չունի նաեւ "Տէր„ բառը։ ||[438] L չունի կարմրագիրս, այլ միայն "Քահ.։„ ||[439] Միայն L ունի "ծառայքս ևն.„ M չունի "քո։„ ||[443] L "զօրհնակ։„ ||[444]

[127] Յոյնը՝ "քահանայն ի ծածուկ.„ ասկէ յառաջ սա խորագիրն ալ կայ՝ "Առնէն քահանայն եւ սարկաւագն զայն ամենայն՝ որ ինչ ի պատարագին Ոսկեբերանի„ ասեն։

[128] Բոլորովին անարատ չէ մնացած հոս հայ բնագիրն. յոյնն է՝ τὸ ποτήριον ἐκ τοῦ γεννήματος τῆς ἀμπέλου = հին թրգմ. "զբաժակն յետ ընթրեացն (— չունի յոյնը —) է ծննդենէ որթոյ։„ (Տես նոյն տեղը՝ Դաշն. 80։)

[129] Դարձեալ անխառն չէ մնացած. բունն է՝ "առ, խառնեաց, օրհնեաց, գոհացաւ, ուրբեաց (— հոս խորագիր —) ետ իւրոց ընտրեալ աշակերտաց եւ առաքելոց՝ ասելով„ եւն (κεράσας, εὐχαριστήσας եւն, տես հին թրգմ. Դաշն. 81, 82։) "ի ձայն„ խորագրին տեղը կ'ըսէ յոյնը՝ "Քահանայն զձեռն ի վեր ունելով բարեպաշտութեամբ եւ օրհնելով՝ ասէ ի ձայն բարձր։„

Զ. [130] Յոյնը սա խորագիրն ունի՝ "Քահանայն խոնարհեցուցեալ զգլուխ իւր՝ աղօթէ ի ծածուկ։„

Է. [131] Յոյնը՝ "Արդ յիշելով եւ մեք Տէր, զփրկագործ (σωτήριον) չարչարանս եւն.„ եւն։ — Յոյնը միայն՝ "զփառաւոր եւ զահաւոր միւսանգամ գալուստն։„

[132] "Զքեզ գովեմք„ չունի յոյնը։ — Յաջորդ աղօթքին սկիզբն յոյնը ճիշդ նոյն խորագիրն ունի, զոր տեսանք Դաշն. 130։

Ը. [133] "Ամենայնի սուրբ„ ուղղելու է գոնէ "ամենայնի- սուրբ„ կամ "ամենասուրբ.„ յոյնը՝ δέσποτα παναγίε։ — Քիչ մ'եսքը "համարձակեմք„ չունի արդի յոյնը, բայց ունէր հինը (տեսէք 175։)

քանզի ոչ ինչ արարաք բարի յերկրի, այլ վասն ողորմութեան եւ գթութեան քո՝ զոր առատապէս հեղեր ի մեզ, համարձակիմք եւ մերձենամք ի սեղան քո սուրբ. եւ առաջի եդեալ[134] զաւրինակ սուրբ մարմնոյ եւ արեան Քրիստոսի քո, զքեզ աղաչեմք եւ ի քէն հայցեմք, սուրբ սրբոց, բարեհաճութեամբ[135] քո գալ Հոգւոյդ քում սրբոյ ի մեզ † եւ յառաջիկայ յընծայս † յայս, աւրհնել զսա եւ սրբել, մաքրել եւ վերացուցանել,[136] եւ՛ արա զհացս † զայս պատուական մարմին Քրիստոսի քո: — Սար. Ամէն: Քահանայն Գ անգամ կնքէ զսա. Եւ զբաժակս † զայս պատուական արիւն Քրիստոսի քո: Սար. Ամէն:

Եւ քահանայն համբուրէ զսեղանն: Որ հեղաւ յաղագս աշխարհիս կենդանութեան. եւ զմեզ զամենեսեան որք ի միջէ հացիս եւ ի միջէ բաժակիս ճաշակեմք՝ միաւորեա ընդ միմեանս միով Հոգւով ի միաւորութիւն վիճակի ի Հոգւոյն սրբոյ հաղորդութիւն:[137] Եւ մի զոք ի մէնջ ի դատաստան կամ ի դատապարտութիւն արասցես ընդունել զանարատ մարմին եւ զպատուական արիւն Քրիստոսի քո. այլ զի գտցուք շնորհս եւ ողորմութիւն ընդ ամենայն սուրբս քո՝ որք յաւիտենից քեզ բարեհաճոյացան նախահարցն հայ-

L "սուրբ սրբոց," նոյնպէս (տող 445) "սրբոյ:" — M "յառաջիկա:" ||[446] L "օրհնել": — L "մաքրել զսա եւ վերացուցանել: Քահանայն կնքէ զսուրբ հացն. Եւ արա զհացս զայս † զնոյն պատուական մարմին Տեառն եւ Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: Սրկ. Ամէն: Եւ զբաժակս զայս † նոյն պատուական արիւն Տեառն եւ Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: Երկրպագէ երիցս եւ համբուրէ զսուրբ սեղանն եւ ասէ ի ձայն: Որ հեղաւ" ևն: ||[452] L այսպէս. իսկ M "ի միաւորութիւն է վիճակի:" ||[453] L "ի Հոգւոյդ սրբոյ հաղորդութիւն....:" — L "մի զոք ի մէնջ դատաստան" ևն՝ առանց "ի" նախդիրի: ||[454] ML "յընդունել" կը կարդայ: Աւելի սկսեալ կ'ընդհատի Lի ընդօրինա-

[134] "Առաջի եդեալ" = προσθέντες, հին թրգմ. "եւ դնել՝ աւրինակ" ևն. զ"աւրինակ" = τὰ ἀντίτυπα ("զաւրինակս". տես հին թրգմ. Տող. 102, 103:)

[135] "Բարեհաճութեամբ." յոյնը՝ εὐδοκίᾳ τῆς σῆς ἀγαθότητος (հաճութեամբ բարութեան քո:)

[136] "Վերացուցանել" = ἀναδεῖξαι (տես հին թրգմ. Տող. 106:) — Աւելի եղբը մինչեւ "եւ արա" (որ թէ՛ հին թարգմանութեան եւ թէ՛ նոր թարգմանութեանս մէջ կայ է), քանի մը խրատագրեր եւ քարոզութիւններ կան յոյն բնագրին մէջ՝ յայտնապէս յետամուտ: Բարբերինեանը հոս կը պակսի, (տես Daniel, p. 430:) Աւելորդ կը համարինք յիշել հոս այս խրատագիրքը ևն: Օրհնութեանց բանաձեւք այսպէս են՝ "Զհացս զայս արա նոյն ինքն պատուական մարմին Տեառն եւ Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: Սարկ. Ամէն: Եւ դարձեալ ասէ. Օրհնեա Տէր զսուրբ բաժակն: Քահանայն օրհնելով ասէ: Եւ զբաժակս զայս նոյն ինքն պատուական արիւն Տեառն եւ Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: Սարկ. ամէն: Քահ. որ հեղաւ վասն կենաց աշխարհի: Սարկ. ամէն: Եւ դարձեալ սարկաւագն ասացեալ ցուցանելով զերկոսին՝ ասէ. Օրհնեա Տէր: Քահանայն օրհնելով զերկոսին զսուրբս՝ ասէ. փոխարկելով Հոգւովդ քո սրբով: Սարկ. ամէն, երիցս: Եւ սարկաւագն խոնարհեցուցեալ զգլուխ իւր քահանային եւ ասելով՝ Յիշեա Տէր զիս զմեղաւորս, դառնայ յատեանն տեղին ուր էր, առեալ դարձեալ եւ զերկսին՝ որպէս զառաջինն: Քահանայն աղաւթէ Զմեզ զամենեսեան, որք ի միջէ" ևն: Շատ խոտորած է բնագ այսմ նոր բիւզանդեանն. եւ հայ թարգմանիչն տակաւին այս յաւելմունքը չէ գտած իւր բնագրին մէջ:

[137] Յոյնը միայն՝ "ի միոյ Հոգւոյ սրբոյ հաղորդութիւն:"

բապետաց, առաքելոց, մարգարէից, քարոզչաց, աւետարանչաց, վկայից, խոստովանողաց, վարդապետաց, ուսուցչաց եւ ամենայն հոգւոց կատարելոց ի Քրիստոս։[138] — Ի ձայն. — Զառաւել զամենասրբուհի, զանարատ, զառաւել փառաւորեալ[139] տիրուհին մեր զԱստուածածինն եւ զմիշտ կոյսն Մարիամ։

## ՑԻՇԱՏԱԿՔ

Թ. *Սարկաւագն խունկ արկանէ։*[140] *Քահանայն.*[141] Սուրբ զերկնային զաւրութիւնսն, սուրբ զՅովհաննէս մկրտիչն, սուրբ *զԱյս անուն* զորոյ զյիշատակն կատարեմք այսաւր, եւ զամենայն սուրբս քո, որոց աղաչանաւք այց արա մեզ Աստուած։ Եւ յիշեա զամենայն ննջեցեալսն մեր զուղղափառս յուսով յարութեան կենացն յաւիտենից.[142] եւ հանգո զնոսա, ուր այցելութիւն լինի լոյս երեսաց քոց։ Եւս առաւել աղաչեմք զքեզ Տէր եւ արարիչ մեր, յիշեա զսուրբ կաթուղիկէ առաքելական եկեղեցի քո.[143] եւ խաղաղացո զսա զոր ստացար պատուական արեամբդ քո սրբոյ. եւ զսուրբ տաճարս զայս հաստատեա մինչեւ ի կատարած յաւիտենից։ Յիշեա Տէր եւ զայնոսիկ որ զպատարագս[144] մատուցին եւ յաղագս որոց մատուցանի։ Յիշեա Տէր զպտղաբերս եւ զբարեգործողս յեկեղեցի քո սուրբ եւ. որք յիշեն զաղքատս եւ զնեղեալս ո-

---

կութիւնք։ ‖455 Չեռ. “ընդ յամենայն...։„ ‖467 Չեռ. (M) “հանգոյ։„ ‖469 Չեռ. “խաղաղացոյ։„ ‖472 Չեռ. “յաղագս որոյ„. ‖474 Չեռ. “հաստոյ։„ ‖482 Հոռ եւ Ի

138 Յոյնը՝ “եւ ամենայն արդար հոգւոյ հաւատով կատարելոյ„ (վախճանելոյ։)

139 “Զառաւել փառաւորեալ„ = τῆς ... ὑπερευλογημένης, ἐνδόξου (զառաւել բարեբանեալ, զփառաւորեալ եւն։)

Թ. 140 Այստեղ յոյնն երկու տող կը դնէ, նշանակելով որ մին պիտի երգեցուի աւագ Հինգշաբթի օրն, միւսն՝ Աւագ շաբաթ։ Անկարելի չէ որ զատոնք տեսած ըլլայ հայ թարգմանիչը, բայց իբրեւ զուտ յունական՝ զանց ըրած. թէեւ կրնայ կասկածելի երեւալ այս ենթադրութիւնը. վերը տեսանք Սրբասացութեան տող մը հայ բնագրին մէջ ալ՝ հաւանօրէն յետագային։ Տաղերէն ետքը սա խրատագիրը կայ՝ “Սարկաւագն արկանէ խունկ շուրջ զսեղանովն որբով, եւ զՑիշատակս (τὰ δίπτυχα) Կենդանեաց եւ Ննջեցելոց՝ զորս կամի՝ յիշէ։„ (Տես հին Թրգմ. էջ 146։)

141 Յոյնը՝ ‹Եւ քահանայն ի ծածուկ։„ Սկիզբն ալ տարբեր է այսպէս՝ “Սուրբ զՅովհաննէս մարգարէ կարապետ եւ Մկրտիչ, զսուրբ եւ զամենագովեալ առաքեալսն, զսուրբ զԱյս անուն„ եւն։

142 Յոյնը՝ “զննջեցեալսն յուսով յարութեան կենացն յաւիտենից„ խօսքէն ետքը կը կցէ միջանկեալ կարճներ. այսպէս՝ “Ա[illegible] [illegible] Վասն փրկութեան այցելութեան քաւութեան մեղաց ծառային Աստուծոյ Այս անուն. [illegible] Վասն հանգստեան եւ քաւութեան հոգւոյ ծառայի քո Այս անուն ի լուսաւոր տեղւոջ, ուստի փախեաւ տրտմութիւն եւ հառաչանք, հանգո զնոսա Աստուած մեր։ Ե[illegible]. Եւ հանգո զնոսա„ եւն, որ է շարունակութիւն աղօթքին՝ ըստ հայ թարգմանութեան։ Այս միջանկեալն անշուշտ չունէր թարգմանչին գործածած օրինակը։

143 Յոյնը կը կցէ “ի ծագաց մինչեւ ի ծագս տիեզերաց.„ իսկ քիչ մը յառաջ չունէր հայոյն “եւ արարիչ մեր„ բառերը։ Քիչ մ'ետքը՝ յոյնը կ'ըսէ “պատուական արեամբ Քրիստոսի քո։„

144 Այսինքն զընծայս կամ զնուէրս պատարագին = τὰ δῶρα։ Քիչ մ'ետքն՝ յոյնն այսպէս ունի “եւ ի վերայ որոց եւ ի ձեռն որոց եւ վասն որոց.„ նոր թարգմանութեան համաձայն է հինը։

զորմածութեամբ.[145] եւ հատո նոցա ըստ մեծի ողորմութեան քում, ընդ երկրաւորիս՝ զերկնայինն, ընդ ժամանակեիս՝ զյաւիտենականն, ընդ ապականացուիս՝ զանապականն։ Յիշեա Տէր որք ի լերինս, յանապատս, յայրս եւ ի փապարս երկրի բնակեալ են։ Յիշեա Տէր որք կուսութեամբ եւ սրբութեամբ, երկիւղիւ[146] եւ ճգնութեամբ եւ զգաստութեամբ քաղաքավարին։ Յիշեա Տէր զբարեպաշտ եւ զքրիստոսասէր թագաւորսն մեր՝ զորս իրաւացուցեր[147] թագաւորել ի վերայ երկրի. զինու ճշմարտութեամբ, զինու բարեհաճութեամբ քո պսակեա զնոսա. հովանի լեր գլխոյ նոցա յաւուր պատերազմի. զաւրացո զաջ նոցա, բարձրացո զբազուկս նոցա. կարողացո[148] զթագաւորութիւն. խոնարհեցո նոցա զամենայն խուժադուժ ազգս որք զպատերազմունս կամեցան. շնորհեա նոցա Տէր զխորին եւ զանյափշտակելի զխաղաղութիւն. խաւսեցիս ի սիրտս նոցա[149] վասն եկեղեցւոյ քո եւ ամենայն ժողովրդեանս. զի եւ մեք խաղաղութեամբ նոցա հաստատութեամբ վարեսցուք զկեանս մեր՝ ամենայն բարեպաշտութեամբ եւ զգաստութեամբ։ Յիշեա Տէր զամենայն իշխանութիւնս եւ զպետութիւնս եւ որք ի պաղատն են եղբարք մեր, եւ զամենայն զաւրականս նոցա. զբարիսն բարիոք պահեա եւ զչարսն դարձո յուղղութիւն քաղցրութեամբ քո Տէր։ Յիշեա Տէր եւ զառաջիկայ ժողովուրդս քո, եւ աւրհնեա, եւ որք վասն ուղիղ պատճառանաց ոչ հանդիպեցան,[150] ողորմեա նոցա ըստ մեծի ողորմութեան քո։ Զշտեմարանս նոցա լցո ամենայն բարութեամբ. զամուսնութիւնս նոցա խաղաղութեամբ եւ միամտութեամբ[151] պահեա. զտղայսն սնո. զերիտասարդսն խրատեա. զծերսն կարողացո. զկարճամիտսն մխիթարեա. զցրուեալսն ժողովեա. զմոլորեալսն դարձո. զցաւ-

---

յաջորդս Զեռ. "զաւրացոյ… բարձրացոյ… կարողացոյ… խոնարհեցոյ…„ եւն։ ||489 Զեռ. "դարձոյ։„ ||491 Զեռ. "վասն… պատ–ճառանաց։„ ||492–4 Զեռ. "լցոյ… սնոյ… զծերսն կարողացոյ…։„ ||495 Զեռ. "դարձոյ.„ նոյնպէս քիչ

145 "Իբր զնեղեալս՝ ողորմածութեամբ„ չունի այժմու յունականը. իսկ յաջորդն այսպէս՝ "եւ հատո նոցա զառատ քո եւ զերկնաւոր շնորհս։ Շնորհեա նոցա ընդ երկրաւորացս՝ զերկնայինսն„ եւն։

146 "Երկիւղիւ„ չունի յոյնը. "սրբութեամբ„ բառին համապատասխանողն է յունարէնին մէջ՝ "բարեպաշտութեամբ։„ Քիչ մ'եաքը "քրիստոսասէր„ բառին տեղ՝ ունի յոյնը "հաւատացեալ։„

147 "Իրաւացուցեր„ բառական թարգմանութիւն = ἐδικαίωσας ("զորս արժանի համարեցար թագաւորել„ եւն։)

148 "Կարողացո զթագաւորութիւն [նոցա„] κράτυνον αὐτῶν τὴν βοσιλείαν (զօրացո, ամրացո կամ հաստատեա։) — Լաւ չէ այնչափ քիչ մ'եաքն՝ "որք զպատերազմունս կամեցան„ փխ. "կամին„, եթէ պէտք չէ ուղղել կարդալ "կամիցին։„

149 Աւելցնելու է յունին հետ՝ "խօսեա„, ուստի "խօսեցիս ի սիրտս նոցա բարիս վասն…։„ Քիչ մ'եաքը կ'ըսէ յոյնն՝ "խաղաղ եւ հանդարտութեամբ վարեսցուք զկեանս„ եւն.

150 "Վասն ուղիղ պատճառանաց ոչ հանդիպեցան„ = δι' εὐλόγους αἰτίας ἀπολειφθέντων ("Վասն բանաւոր պատճառաց հեռի գտան„ կամ "արգելան ի գալոյ։„) Քիչ մ'եաքն "եւ ողորմեա նոցա [illegible]„ եւն։

151 "Միամտութեամբ.„ բառս նախնական իմաստով = ὁμονοίᾳ (միաբանութեամբ, համաձայնութեամբ։) — Քիչ մ'եաքն "զծերսն կարողացո. այսինքն զօրացո (περικράτησον)։

ագնեալսն բժշկեա,[152] եւ զուգակցեա ընդ սուրբ կաթուղիկէ եկեղեցւոյ քո: Որք նեղեալ են յայսոց պղծոց՝ ազատեա. նաւորդացն նաւակցեա. ուղեգնացացն ճանապարհակցեա. այրեաց ՝առաջակայ լեր. որբոց՝ պաշտպան. զգերեալսն դարձո. եւ որք յաւտարութեան են եւ յարտասահմանութեան եւ յատեանս եւ ի բանդս եւ ի դառն ծառայութեան, եւ յամենայն նեղութեան, ի հալածանս, ի վիշտս, ի վտանգս:[153] Յիշեա Տէր Աստուած մեր զամենեսեան որք խնդրեն ի մեծամեծաց գթութեանց քոց:[154] Յիշեա Տէր Աստուած մեր զամենեսեան որք սիրեն զմեզ եւ որք ատեան. եւ որք պատուիրեցին մեզ անարժանիցս աղաւթել վասն նոցա: Եւ զամենայն ժողովուրդս քո յիշեա Տէր Աստուած մեր. եւ ի վերայ ամենեցուն հեղ զառատ ողորմութիւն քո եւ զգթութիւն, եւ ամենեցուն պարգեւելով զառ ի փրկութեան խնդրուածս. եւ զորս մեք ոչ յիշեցաք յանգիտութենէ կամ ի մոռացմանէ կամ ի բազմութենէ անուանց, ինքնին դու Տէր յիշեա որ գիտես զիւրաքանչիւր անձնաւորութիւնս եւ զանուանակոչութիւնս,[155] որ գիտակդ ես եւ ճանաչես զամենայն ստեղծեալքս յորովայնս մարց իւրեանց: Զի դու ես Տէր աւգնական անաւգնականից, յոյս անյուսից, աշխատելոց փրկութիւն,[156] նաւելոց նաւահանգիստ, հիւանդաց բժիշկ: Դու ինքնին Տէր ամենեցուն ամենայնի[157] ամենայն ինչ լեր. որ գիտակդ ես իւրաքանչիւր խնդրուածոց, տուր եւ զպիտոյս

---

մ'եւսքն (տող 499): ‖[496] "Զուգակցեա„ մենք ուղղեցինք ու դրինք: Ձեռ. (M) ունի աղաւաղութեամբ՝ "ուղղակցեա:„ ‖[497] Ձեռ. "ուղղեգնացացն:„ ‖[498] Ձեռ. "այրեաց առաջակա լեր:„ ‖[503] Այստեղ Ձեռ. "ատեն.„ ուր ըլլալու էր

[152] Եթէ հարազատ է ձեռագրիս "ուղղակցեա„, չունի յայնը հոս, այլ յետոյ՝ ինչպէս պէտք այլ է. կից են՝ "զմոլորեալսն դարձո եւ զուգակցեա (σύναψον, անյարմար է հոս "զուգակցեա„ գրելը,) ընդ սուրբ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցւոյ քո:„ Անկասկած "ուղղակցեա„ բայն անյաջող թարգմանութիւն համարելու չէ, այլ գրչի սխալ մը՝ քիչ մ'եւսքն եկող "ուղեգնացացն ճանապարհորդակցեա„ խօսքին հետեւութեամբ գրուած. կամ բուն աղաւաղութիւն "զուգակցեա„ բառին: "Զգերեալսն դարձո„ խօսքէն առջը գալու է՝ "զցաւագնեալսն բժշկեա,„ որ արդի օրինակաց մէջ այնպէս անյարմար տեղ մ'ինկած է: Անյաջող է նոյնպէս "այրեաց առաջակայ լեր„ = χηρῶν πρόστηθι (այցելու, տեսուչ, խնամակալ լեր:)

[153] Յոյնն այս ամէնուն տեղ կ'ըսէ միայն. "որք յատենի են եւ յաքսորս եւ յամենայն նեղութեան եւ ի վտանգի (ի հարկի) եւ ի տարակուսի:„

[154] Անյաջող է "ի մեծամեծ գթութեանց քոց„ փխ. "ըստ մեծ գթութեան քո:„ Արդեօք այն եղած է սոյն պատճառն որ հոս գործածուած յունարէն δέομαι (պէտք ունենալ, խնդրել) բայը տրական խնդիր ունի այս տեղը: Յունականը կրնայ նաեւ հասկցուիլ՝ "որք կարօտ են մեծի գթութեան քում.„ եւ այս է լաւը:

[155] Յոյնը ἑκάστου τὴν ἡλικίαν καὶ τὴν προσηγορίαν (զիւրաքանչիւր հասակ եւ զանուանակոչութիւնն:) Ի՞նչ ըսելու ենք յաջորդ խօսքին մէջ "յորովայնս մարց„ ասութեան, ուր յոյնն է ἐκ κοιλίας μητρὸς ("յորովայնէ մօր.„) կ'երեւայ թէ իւր բնագրին մէջ ἐν κοιλίαις էր:

[156] Յոյնն է ὁ τῶν χειμαζομένων σωτὴρ (փրկիչ որոց ի փոթորկի). այն իմաստով է հին թարգմանութեան այլ ճիշդ այստեղ "խռովելոց հանգիստ„ գրելը: Սխալ՝ է նոր թարգմանութեան մէջ "աշխատելոց„ բառը. (χειμάζω եւ κάμνω դժուարաւ կրնային շփոթուիլ:)

[157] "Ամենեցուն„ եւ "ամենայնի„ քովէքով չեն կրնար կենալ. մին կամ միւսը սխալ գրչութեան արդիւնք է:

նոցա։[158] փրկեա Տէր եւ զքաղաքս զայս եւ զամենայն գաւառս եւ զգեաւղս[159] ի սովոյ, ի ժանտոյ,[160] ի ցասմանէ,[161] ի շարժմանէ, յընկղմելոյ, ի սրոյ, ի հրոյ, յընթացմանէ[162] այլազգեաց եւ յընդանի պատերազմաց։[163] Յիշեա Աստուած եւ զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս, որք ուղիղ գնացիւք համառատեն ի մեզ զբանն ճշմարտութեան։[164]

*Սարկաւագն բարձրաձայն.*[165] Ընդ առաջինսն յիշեա Տէր եւ զեպիսկոպոսապետն մեր *զԱյս անուն*, զոր շնորհեցեր եկեղեցւոյ քում սրբոյ, խաղաղութեամբ, առողջ, պատուական եւ երկայնաւրեայ։

*Քահանայն.*[166] Յիշեա Տէր զքահանայութիւնս մեր եւ որ ի Քրիստոս զսարկաւագութիւնս, եւ զամենայն քահանայական դասս. եւ մի զոք ի մէնջ ի դատաստան կամ ի դատապարտութիւն արասցես սուրբ մարմնոյ եւ արեան միածնի քո։[167] Յիշեա Տէր ըստ բազում գթութեան քում եւ զիմ անարժանութիւնս, եւ թող ինձ զամենայն յանցանս իմ զկամայ եւ զակամայ. եւ մի վասն իմոյ անարժանութեանս արգելուր զշնորհս Հոգւոյդ սրբոյ յառաջիկայ յընծայէս։ Այլ այց արա մեզ քաղցրութեամբ քո Տէր. յայտնի լեր

---

“ատեան զմեզ։„ ||519 Զեռ. ունի “Սարկաւագն բարձ։„ ||521 Զեռ. “երկայնաւ-

158 Թէ յոյնը եւ թէ հին թարգմանութիւնը կը ցուցընեն որ աղաւաղ է այս խօսքը. կամ “գիտես„ մ'ինկած է “զորոն„ (ոչ “սուրբ„) բառէն յառաջ, կամ պէտք է “ատան„ եւ “սիոայեց„ կարդալ. (ըստ յունին՝ “որ գիտակդ ես իւրաքանչիւր, եւ խնդրուածոց, զօն խո դէտոյեց նոցա„։) Ուղիղն ըլլալու է առաջինն՝ ինչպէս կը վկայէ հինն ալ՝ “որ գիտես զիւրաքանչիւր որք եւ զխնդրուածսն, զորոն խո զդետո նորա։„

159 Այսպէս ուղղագոյն կ'երեւայ. յոյնը կրկնութեամբ՝ “...զքաղաքս զայս, եւ զամենայն քաղաքս եւ զգաւառս„ եւն։

160 Պէտք է ապահովութեամբ գրել գոնէ “ի ժանտոյ„ = ἀπὸ... λοιμοῦ (ի ժանտախտէ։) “Ժանտ„ իբրեւ թոյն եւ նման նշանակութեամբ ընդունելի է. բայց “ժանդ„ իբրեւ քաղցկեղ կամ “վերջօ—„ յիշուած քանի մը տեղերն գոնէ տարակուսական ընթերցուած պէտք է համարիլ. եւ ուղղել “ժանտ„։

161 Չունի յոյնը. եւ շատ չի յարմարիր հոս։

162 Ընդարձակ նիւթական թարգմանութիւն է՝ “յընթացմանէ այլազգեաց„ = ἀπὸ... ἐπιδρομῆς ἀλλοφύλων (յարձակմանց, կամ ի հէնէ։)

163 Հոս յոյնը դարձեալ միջանկեալ խօսաքիր մ'ունի եւ մէկ երկու կարճ խօսքեր. “Իսկ սարկաւագն դառնայ ի դասն սրբոյ բեմին՝ կալեալ զուրարն վերջին մատամբքն՝ ասէ. Ամենեցուն եւ ամենեցունց։ Դասն Ամենեցուն եւ ամենեցունց (արակ., իգ.)։ Եւ քահանայն ի ձայն բարձր.„ եւ կը յաջորդէ եպիսկոպոսին յիշատակութեան կարգը՝ “Ընդ առաջինսն„ եւն։

164 Այս տողն յոյն բնագրին մէջ յաջորդ աղօթքին սկզբնաւորութիւնն է. տես Ծան. 166։

165 Սարկաւագին բերանը դրուած այս տողերն յոյն բնագրին մէջ քահանային կը տրուին։ “Զոր շնորհեցեր„ եւն այսպէս է յունականին մէջ՝ “Զոր շնորհեցեր սրբոց քոց եկեղեցեաց խաղաղութեամբ, (պահեա) կենդանի, պատուեալ, առողջ, երկայնաւրեայ, ուղիղ վարդապետեալ զբան ճշմարտութեան քո։„ Յունն ասկէ ետքը սարկաւագին բերանը կը դնէ ուրիշ քարոզութիւն մը նման իմաստով եւ կը կնքուի ժողովրդեան պատասխանովը՝ “Ամենեցուն եւ ամենեցունց։„ Լաւագոյն կը համարինք հայ թարգմանութեան ընթերցուածը. հին հայն այս միջանկեալներն ամենեւին չունի, եւ յաջորդ աղօթքը կը կցէ առաջնոյն։

166 Հոս կու գայ նախ՝ ըստ յոյն բնագրին “Յիշեա Տէր զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս, որք ուղիղ համառօտեն մեզ զբանն ճշմարտութեան։„ Ասկէ ետքը կու գան սա տողերը՝ “Յիշեա Տէր ըստ բազում գթութեան քում զիմ անարժանութիւնս„ եւն. անկէ ետքը “Յիշեա Տէր զքահանայութիւն„ եւն։ Ուստի տեղափոխութիւն մ'եղած է։

167 Յոյնը՝ “եւ մի զոք ի մէնջ յամօթ արասցես՝ որ կամքս զսրբով սեղանով քով։„

*Ժողովուրդն.* Հայր մեր որ յերկինս ես. սուրբ է անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. եղիցին Տէր կամք քո որպէս ի յերկինս եւ յերկրի: Զհաց մեր հանապազորդ տուր մեզ: Թող մեզ զպարտս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց. եւ մի տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէն:

*Քահանայն.*[182] Զի քո է արքայութիւն եւ քո է զաւրութիւն եւ փառք յաւիտեանս: *Ժողով.* Ամէն: *Քահ.* Խաղաղութիւն: *Ժողով.* Եւ հոգւոյ քում: *Սար.* Զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք:

ԺԴ. *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ:* Տէր Տէր, որ հայրդ ես գթութեանց եւ Աստուած ամենայն մխիթարութեանց. որք խոնարհեցուցանեն քեզ զգլուխս իւրեանց՝ աւրհնեա եւ սրբեա զոսա, պահպանեա եւ ամրացո, զաւրացո, եւ յամենայն գործոց չարեաց ի բաց մերժեա, եւ ամենայն գործովք բարեաց զարդարեա.[183] եւ արժանաւորեա անդատապարտաբար ընդունել յանարատ եւ ի կենդանարար յայսմ խորհրդոյս՝ ի թողութիւն մեղաց, ի Հոգւոյդ սրբոյ ընդունելութիւն:[184] *Ի ձայն.* Շնորհաւք եւ մարդասիրութեամբ միածնի Որդւոյ քո, ընդ որում աւրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ ամենասուրբ եւ բարերար քո Հոգւովդ այժմ:[185] *Ժողով.* Ամէն:

*Քահանայն.*[186] Նայեաց Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր ի սուրբ բնակութենէդ քումմէ եւ յաթոռոյ փառաց թագաւորութեանդ քո. եկ ի սրբել եւ ի կեցուցանել զմեզ, որ ընդ Հաւր նստիս եւ աստ պատարագիս. արժանի արա տալ մեզ յանարատ մարմնոյ քո եւ ի պատուական արենէս, եւ ի ձեռն մեր ամենայն ժողովրդեանս:

---

մեր հանապազորդ տուր մեզ:„ ‖587–88 Ձեռ. (M) ամրացոյ, զաւրացոյ:„ ‖599 Կը սկսի L-ի ընդօրինակութիւնը: L խորագիրս այսպէս ունի. "Երկրպագէ եւ համբուրէ զսեղանն եւ ասէ. Ողջոյն քեզ փրկութիւն աշխարհի եւ Բան Հաւր...„ ուստի բոլորովին ուրիշ կտոր մ'ունի հոս L քան M, որ "Բարձրեալ ես„ եւն.

եւ "Հայր մեր„ի սկիզբն ալ ժողովրդեան բերանը կը դրուի: Հին հայն հնագոյն սովորութիւնը պահած է. (տես նոյն տեղը՝ Ծան. 124, 125:) — Բիւզանդեան օրինակին "Հայր մեր„ աղօթքն ամբողջ գրել պէտք չէ տեսած իբրեւ ծանօթ:

182 Մնացեալը այսպէս է յունականին մէջ՝ "Ի յոյն. Զի քո է արքայութիւն եւ զօրութիւն եւ փառք Հօր: Քահ. Խաղաղութիւն ամենեցուն: Սարկ. Զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք: Քահանայն աղօթէ„ եւն: Սակայն "Զի քո է„ եւն վերջաւորութենէ ետքն ժողովրդեան "Ամէն„ ըսելուն կը վկայէ նաեւ Բարբ.: "Հայր մեր„ի վերջաւորութիւնն ուրիշ կերպարանօք կը ներկայանայ հին թարգմանութեան մէջ:

ԺԱ. 183 Յոյնը՝ παντὶ δὲ ἔργῳ ἀγαθῷ σύναψον (մերձեցո յամենայն գործս բարիս:)

184 Յոյնը՝ εἰς Πνεύματος ἁγίου κοινωνίαν ("ի հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ„, ինչպէս վերն արդէն թարգմանուած գտանք:)

185 Յոյնը քանի մը մանր տարբերութիւններ ունի. "Շնորհօք, գթութեամբ եւ մարդասիրութեամբ միածնի Որդւոյ քո, ընդ որում օրհնեալ ես, հանդերձ ամենասուրբ եւ բարի եւ կենդանարար Հոգւովդ քով„ եւն:

186 Այս աղօթքն Ոսկեբերանի Պատարագին մէջէն է. (տես Dan., p. 365:) Բարբերինեան օրինակն՝ որ Բարսղի Պատարագին մէջ չունի՝ (ինչպէս եւ ոչ հին հայ թարգմանութիւնն,) ունի սա ալ Ոսկեբերանի Պատարագին մէջ. սակայն շատ համառօտ կերպով: Մեր այստեղ տեսած երկրորդ հայ թարգմանութիւնը՝ ճշգիւ կը համընթանայ յունարէնին. միայն "աստ պատարագիս„ տարբեր ընթերցում մըն է, ուր

[187]*Եւ երկրպագէ երիցս եւ համբուրէ զսեղանն ասելով քահանայն.* **Բարձրեալ ես դու յերկինս Աստուած, եւ յամենայն երկիր են փառք քո։**[188] *Սար.* **Պռաւախումէն։**

*Քահանայն վերացուցանէ զհացն երկոքին ձեռաւքն բարձր քան զգլուխն ասելով.* **Ի սրբութիւն սրբոց**[189]։ *Ժողովուրդն ասէ.* **Միայն սուրբ, միայն Տէր Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հաւր. ամէն**[190]։ *Եւ քահանայ նշեկանէ զհացն ըստ աւրինին եւ արկանէ մասն ի բաժակն ասելով.* **Ի լրումն Հոգւոյն սրբոյ։** *Եւ դպիրքն պաշտեն.* **Քրիստոս պատարագեալ բաշխի ի [միջի եւն]**։[191]

[192]*Դարձեալ քահանայն երկրպագէ երիցս եւ թողութիւն խնդրէ եւ համբուրէ զսեղանն ասելով.* **Մարմին կենարար եւ անմահ Որդւոյն Աստուծոյ պատարագեալ բաշխի ի միջի մերում ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց մերոց։** *Եւ առնու մասն ի ձեռն եւ համբուրէ եւ խոնարհի եւ նովաւ կնքէ զբաժակն երիցս ասելով երեք անգամ.* **Խոստովանիմ եւ հաւատամ զի դու ես Որդի Աստուծոյ որ բառնաս զմեղս աշխարհի։**

---

կ'ըսէ։ ‖601 L "պռօսխումէն." M "պռաւախաւմէն։" ‖602 L "երկոքին ձեռօքն." ուստի երկու ձեռագիրքն ալ ունին "երկոքին" անսովոր գործածութիւնն փխ. գործիականի հոլովի։ — L "Ի վեր քան զգլուխն" կ'ըսէ, M "բարձր քան զգլ...։" ‖603 M "զսեղան." յետոյ՝ կրկին ունի "Քահ." եւ "Ժողով." բառերը. "...Քահ. Ի սրբութիւն։ Ժողովուրդն ասէ. Ժողով. Միայն սուրբ" եւն։ ‖605 L "ըստ օրինին։" — Նաեւ L "Ի լրումն Հոգւոյն...։" ‖606 L պարզապէս. "Դպ. Քրիստոս պատարագեալ. ալէլուիա։" ‖607 Միայն L ունի "դարձեալ քահանայն...", M չունի։ ‖608 L "զսեղանն։" — L "Մարմին կենարարն եւ անմահն Որդւոյն...։" ‖610 L չունի "եւ խոնարհի։" — L "եւ նովաւ կնքէ երիցս անգամ զբերանն ասելով...։" ‖613 L պարզ "եւ ճաշակէ երիցս։" ‖614 L "պաշտեն դպիրքն յոյնը կ'ըսէ՝ καὶ ὧδε ἡμῖν ἀοράτως συνών (Բարբ. παρών) կամ՝ "եւ աստ ընդ մեզ ես (Բարբ. առաջիկայ ես") աներեւութապէս։"

[187] Ասկէ եւոեւ եկած բոլոր մասերն մինչեւ Համ. ԺԲ՝ չկան բիւզանդեան Բարսղի մէջ, որ սոսկ տեղ առ քանի մը տող ունի՝ "Ի յոյն (արկ.) Պռոսխումէն։ Քահ. Սրբութիւնք՝ Սրբոց։ Եւ յետ կատարելոյ հաղորդութեան եւ բառնալոյ սրբոց խորհրդոցն ի սրբոյ սեղանոյն՝ աղօթք ժողովոյն. Գոհանամք" եւն. (Համ. ԺԲ։) — Բարբերինեան օրինակն ունի խրատագրոց մէկ քանին, այսպէս վերացուցանելն եւ բեկանելն հացին եւն։ Աւելին կայ Ռուսերէնի պատարագին մէջ. (տես Dan., p. 365։)

[188] "Բարձրեալ ես." նոր թարգմանութեան յաւելուկ է։ Ռուսեր. այստեղ կ'ըսէ "Աստուած ողորմեա ինձ մեղաւորիս։" Սակայն ճիշդ այս խօսքն ունի հաղորդութեան ժամանակն Ռուսերէնի փարիզեան ձեռագիրը. (Dan., 367 Ծան.։)

[189] "Սրբութիւնք՝ սրբոց." (տես հին թրգմ. Ծան. 134։)

[190] Ռուսերէնի պատարագէն։ — Ցաջորդ խրատագիրն եւ "Ի լրումն Հոգւոյն սրբոյ" ըստ Բարբ. օրինակին է։

[191] Տարակոյս չկայ, որ հայ գրչաց յաւելուածն է այս տողը, թէեւ Ռուսերէնի Պատարագին մէջ ալ կը նշանակուի որ հոս Հաղորդութեան տող մը կ'երգեցուի։

[192] Ասկէ ետքը մինչեւ ԺԲ. Համառօտ՝ Բարսղի Danielի հրատարակութեան մէջ ամենեւին չկայ։ Քիչ շատ նմանութիւններ կան ուրիշ ձեռագրի մը մէջ, որուն այս մասին երկար ընթերցուածները կը գտնէ Goar ծանօթութեանց մէջ. (Goar, p. 178—9.) շատ բան նոյնպէս Ռուսերէնի պատարագին մէջ. (Dan., p. 367 ff.) Իսկ սակայն ամբողջն այնպէս՝ ինչպէս որ կը ներկայացընեն հոս հայ ձեռագիրքն, տեղ մը չենք գտներ, եւ չի կրնար ալ ամէն մասամբ անաղարտ ու հարազատ թարգմանչին գրածն ըլլալ։ Զափազանց շատ բան կայ մեր սովորական պատարագէն առնուած մուծուած, ինչպէս "Լցաքն." կամ նաեւ "Քրիստոս պատարագեալ." տաղէն փշրանքներ։

Եւ ապա հաղորդի, նոյնպէս եւ զբաժակն առնու եւ ճաշակէ երիս ճաշակս: Եւ ի ժամ հաղորդելոյն պաշտեն դպիրքն. **Մատիք առ Տէր եւ առէք զլոյս. ալէլուիա:**

Եւ ապա առնու զընծայսն եւ դառնայ ի ժողովուրդն ասելով. **Երկիւղիւ եւ հաւատով յառաջ մատիք:** Եւ համաւրէն ժողովուրդն զձեռս ի վեր համբարձեալ ասելով. **Աւրհնեալ որ գալոց ես անուամբ Տեառն: Աստուած մեր եւ Տէր մեր երեւեցաւ մեզ:** Եւ ապա հաղորդին: Եւ զկնի հաղորդելոյն խաչակնքէ զժողովուրդն ասելով. **Կեցո Տէր զժողովուրդս քո եւ աւրհնեա զժառանգութիւնս քո, հովուեա եւ բարձրացո զսոսա յայսմ հետէ մինչեւ յաւիտեան:** Ժողով. **Ամէն:**

Եւ դնէ զընծայսն ի սեղանն եւ ծածկէ: Սար. **Զ Տէր աղաչեսցուք:** Դպ. **Տէր ողորմեա:** Եւ քահանայն ի ծածուկ աղաւթէ. եւ սարկաւագն խունկ արկանէ ընծայիցն եւ սեղանոյն, եւ տանին յաւանդատունն զսրբութիւնն, եւ պաշտեն. **Լցաք ի բարութեանց քոց Տէր ճաշակելով զմարմին քո եւ զարիւն: փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ: Որ հանապազ կերակրես զմեզ, առաքեա եւ այժմ զհոգեւոր քո աւրհնութիւն: փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ:**

Եւ ի տանելն քահանայն ասէ. **Աւրհնեալ է Աստուած այժմ եւ միշտ:** Ժողով. **Ամէն:**

**ԺԲ.** Քահանայն աղաւթէ: **Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր ի վերայ ամենայն բարեաց զոր պարգեւեցեր մեզ՝ հաղորդել սրբոյ եւ անարատ եւ անմահական երկնաւոր քոց խորհրդոցս,[193] զոր ետուր մեզ ի բարեգործութիւն[194] եւ ի բժշկութիւն հոգւոց եւ մարմնոց: Ինքնին դու Տէր տուր լինել մեզ ամենեցուն հաղորդս սուրբ մարմնոյ եւ արեան Որդւոյ քո ի հաւատս առանց ամաւթոյ,[195] ի յոյս հաստատուն,[196] ի սէր առանց կեղծաւորութեան, յաճումն[197] իմաստութեան, ի բժշկութիւն հոգւոց եւ մարմնոց,[198]**

---

ասելով...:" ||616 L "Եւ նա ի ժողովուրդն" ունի. (չկայ "եւ ապա առնու զընծայսն:") ||617 L "համօրէն... համբարձեալ...:" ||618 L "Օրհնեալ:" ||621 M բարձրացոյ: ||622 L "Սրկ. Ամէն:" ||623 L. "...եւ ծածկէ. եւ քարոզէ Սրկ....:" ||624 L "աղօթէ:" ||625 L "եւ դպիրքն պաշտեն. Լցաք" ունի: ||630 ff. M այսպէս է բուն՝ "Եւ ի տանելն քահանայն ասէ Ժող.", որ չի յարմարիր:

ԺԲ. 193 Յոյնն այսպէս է. "Գոհանամք զքէն Տէր, վասն հաղորդութեան սուրբ, անարատ, անմահ եւ երկնային խորհրդոց քոց. զորս ետուր մեզ" ունի:

194 Յոյնը՝ "ի բարեգործութիւն եւ ի սրբութիւն եւ ի բժշկութիւն հոգւոց եւ մարմնոց մերոց:"

195 Բացատրութեան կերպը բոլորովին տարբեր է յունարէնին մէջ. "Ինքնին դու Տէր ամենեցուն, տուր զի լիցի հաղորդութիւնս սուրբ մարմնոյ եւ արեան Քրիստոսի քոյ ի հաւատս առանց ամօթոյ" ունի:

196 Յոյնը չունի՝ "ի յոյս հաստատուն." ընտրելին է հայը:

197 "Յաճումն իմաստութեան" = εἰς πλησμονὴν σοφίας (ի լրումն իմաստութեան:)

198 Յոյնը կը կցէ հոս εἰς ἀποτροπὴν παντὸς ἐναντίου ("ի դարձումն ամենայն հակառակորդի" կամ՝ կործանումն, պարտութիւն:)

*ի պաշտպանութիւն պատուիրանաց, ի պատասխանատուութիւն ընդունելի բարեընկալ*[199] *առաջի ահաւոր բեմի Աստուծոյ քում Քրիստոսի։*

*Եւ տանի զընծայսն յերրորդ սեղանն ասելով. Բարձրեալ ես դու յերկինս Աստուած. եւ յամենայն երկրի են փառք քո։ Ժողով. Լցցին բերանք մեր խնդութեամբ, որպէս աւրհնեսցուք զփառս քո։*[200]

*Սարկաւագն.*[201] *Որք ուղիղ հաղորդեցայք յանարատ եւ յանապական խորհրդոյս արժանապէս զՏէր աղաչեսցուք։ Ժողով. Տէր ողորմեա։ — Սար. Ընկալ կեցո ողորմեա եւ պահեա զմեզ Աստուած քոյին շնորհիւդ։ Ժողով. Տէր ողորմեա։ — Զժամս եւ զաւրս խաղաղական սրբութեամբ եւ առանց մեղաց, կատարեալ հաւատով ի Տեառնէ. շնոր.։ — Զանձինս մեր եւ զմիմեանս Տեառն։*

*[Քահ.] ի ձայն. Զի դու ես սրբութիւն մեր եւ կեանք.*[202] *եւ քեզ փառս մատուցանեմք այժմ։*

*Սար.*[203] *Խաղաղութեամբ երթիցուք։ Դպ. Յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Սար. ԶՏէր աղաչեսցուք։ Ժողով. Գ. Տէր ողորմեա։*

### ԱՂԱՒԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ[204]

ԺԴ. *Քահանայն իջանէ ի մէջ եկեղեցւոյն եւ ասէ։*[205]

*Աստուած ամենակարող եւ սրտագէտ, որք հաղորդեցան անարատ եւ կենդանարար խորհրդոց քոց՝ աստուածային բնութեանցդ քոց հաղորդեալք։ Աղաչեմք զքեզ Տէր, մի դարձցիս եւ մեկնիս ի մէնջ, եւ մի թողուր զմեզ,*

---

L "Օրհնեալ... մինչեւ եւ յաւիտեանս յաւիտենից։ L կը յաւելու "Սրկ." եւ կը կցէ "Քահանայն աղօթէ ի ծածուկ ասելով. Գոհանամք" եւն։ ‖640 Չկա. "բարի ընկալ": ‖643 Չկա. M "լցին": ‖644 L "Սարկաւագն քարոզէ:" ‖646 M "կեցոյ... քոին:" ‖664 Չկա. M "աշտիճան:" ‖670 L

199 Որչափ ալ ձեռագիրը "բարի ընկալ" կարդան՝ ուղիղն ըլլալու է "բարեընկալ" ծիշդ = εὐπρόσδεκτον. "ընդունելի" ալ նոյն բառին տեղ գործածուած է, որով հոս հայն աւելաբանութիւն մ'ունի, սովորական երեւոյթ մանաւանդ հին հայ թարգմանութեանց։

200 Բիւզանդեան Բարսղի բնագիրը չունի այս ամբողջ կտորը։ "Բարձրեալ ես" եւն խօսքին համար տես վերը Ծան. 188, ուր կար արդէն անգամ մը։

201 Այս ամբողջ քարոզութիւնը համառօտուած է յունարէնին մէջ այսպէս. "Սրկ. Ցոյն կացէք (ուղիղ) որք հաղորդեցայք (ὀρθοὶ μεταλαβόντες) աստուածային, սուրբ, անարատ եւ անմահ։ Ընկալ, կեցո, ողորմեա եւ պահեա։ Զօրս ամենայն կատարեալ, սուրբ։"

202 "Եւ կեանք" չունի յոյնը. վերջաւորութիւնը հայերէն օրինակներն ամբողջ գրած չեն երբեւ ծանօթ։

203 Այս ամէնը բիւզանդականին մէջ կայ այսպէս համառօտուած. "Խաղաղութեամբ երթիցուք։ ԶՏէր աղաչեսցուք։"

ԺԴ. 204 Այս խորագիրը մենք դրինք. ասոր տեղ բիւզանդեանն ունի "Աղօթք յետ խորանին (εὐχὴ ὀπισθάμβωνος), զոր ասէ քահանայն ի ձայն բարձր։" Սակայն այս խորագիրս ոչ թէ մեր թարգմանութեան ունեցած աղօթքին համար է, այլ ուրիշ աղօթքի մը՝ "Որ օրհնես զայնոսիկ։"

205 Այս աղօթքը չունին բիւզանդեան Բարսղի յոյն օրինակք, եւ ոչ հին թարգմանութիւնը՝ գոնէ M ձեռագրին համեմատ. վասն զի L կը յիշէ ծիշդ այս աղօթքը գրելով "Քահանայն իջանէ ի մէջ եկեղեցւոյն եւ ասէ զԱրտաքին աղօթքն Բարսղի Եպիսկոպոսի որ է՝ "Աստուած ամենակարողդ եւ սրտագէտ" եւն։ Տես այս խնդրոյն մասին եւ այս աղօթքը՝ վերը հին թարգմ. էջ 156—57, Ծան. 137։

206 Այս ամբողջ վերջին մասը չունին Բարսղի

այլ յամենայնի աննուազութիւն շնորհեա. զցաւս բժշկելով. ի նեղութիւնս առաջակայ լինելով. ի չքաւորութեանս խնամարկելով. ի փորձանաց փրկելով. ի վիշտս մխիթարելով, ի պարտեաս առատանալով. յամենայնի զպիտոյսն խորհելով, թագաւորաց ի պատերազմունս յաղթութիւն շնորհելով. քահանայից հաւատոց միաբանութիւն. եւ որք սպասաւորակից եղեն մեզ եւ պաշտօնակից, աստիճան բարի յաջողեա ամենեցուն նոցա։ Եւ հաւատարիմ քո ժողովրդեանս զառ ի փրկութիւն պարգեւելով զխնդիրսն յայժմու ժամանակիս, եւ ի հանդերձելումն արժանաւորեա հասանել քեզ եւ անմահ քո երկնաւոր արքայութեանդ։ Քանզի դու ես բարեաց բաշխաւղ յամենայնի, եւ քեզ փառս մատուցանեմք այժմ եւ միշտ։

[206]Ելանէ դարձեալ ի բեմն եւ երկրպագեալ համբուրէ զսեղանն, եւ ասէն միաբան. Եղիցի անուն Տեառն աւրհնեալ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։ Եղիցի անուն Տեառն աւրհնեալ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։ Եղիցի անուն Տեառն աւրհնեալ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։

Քահանայն դառնայ ի վերայ ժողովրդեանն խաչակնքէ եւ ասէ. Կատարումն աւրինաց եւ մարգարէից դու ես Քրիստոս Աստուած մեր, որ լցուցեր զամենայն հայրական տնաւրէնութիւնս. լցո եւ զմեզ Հոգւովդ քո սրբով։

Եւ ասի. Աւրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամենայն ժամ աւրհնութիւն նորա. ի բուն ասի:

Քահանայն աւրհնէ զնշխարն եւ բաշխէ ժողովրդեանն, եւ խաչակնքէ զժողովուրդն ասելով. Աւրհնեալ եղերուք ի շնորհաց Հոգւոյն սրբոյ, երթայք խաղաղութեամբ. եւ Տէր եղիցի ընդ ամենեսեան։

Դառնայ յարեւելս երկրպագէ սուրբ սեղանոյն ասելով. Տէր Յիսուս Քրիստոս, Տէր Աստուած մեր ողորմեաց մեզ։

Մտանէ յաւանդատունն եւ մերկանայ ի զգեստուցն, զայ առաջի սրբոյ սեղանոյն երկրպագէ երիցս եւ երթայ խաղաղութեամբ:

---

“եւ ասէն միաբան զայս... օրհնեալ...։„ ‖[673] M “դառնա։„ ‖[674] L “օրինաց։„ ‖[675] M “լցոյ։„ ‖[676] L “եւ ասէն. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ։ Ջնջուած է ծայր ասէն։„ M “աւրհնութիւն նոր„ գրած է՝ համառօտութեամբ։ ‖[678] L “օրհնէ... եւ խաչակնքէ ի վերայ ժողովրդեան ասելով. Օրհնեալ † եղերուք։ Եւ դառնայ յարեւելս երկրպագէ առաջի սրբոյ սեղանոյն ասելով. Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր ողորմեա մեզ։„ ‖[683] M “ի զգեստուցն.„ L “մերկանէ ի զգեստուցն։„

բիւզանդեան օրինակը։ Առանց տեղ կայ վերջին աղօթք մը, զոր Հայը չունի՝ “Աղօթք աւանդատան„ կոչուած (ըստ Բարբ. εὐχὴ τοῦ σκευοφυλακίου), եւ է այսպէս. “Ի գլուխ ել՝ եւ կատարեցաւ՝ որչափ մեր կար է, Քրիստոս Աստուած մեր, խորհուրդ տնօրէնութեան քո։ Զի արարաք զյիշատակ մահուան քո. տեսաք զօրինակ յարութեան քո. լցաք անվախճան կենօք. ի բերկրութիւնս անսպառ վայելեցաք, որոց եւ ի հանդերձեալ յաւիտեանս արժանի զմեզ առնել հաճեսցիս։ Շնորհօք անսկզբն Հօր քո եւ սուրբ եւ բարի եւ կենդանարար Հոգւոյդ, այժմ„ եւն։ Այս աղօթքը բաւական տարբեր ձեւով կ՚աւանդէ Բարբերինեան օրինակը։

Դ.

# ՀԱՅՈՑ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑՔ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒՆ ՎԵՐՋԵՐԸ

---

### ՆԱԶԻԱՆԶԵԱՆ ՉՈՐՍ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑՔ

*Ընդհանուր տեսութիւն:*

*Ոչ իբրեւ յարդի բոց մը շողաց անցաւ Ե. դարուն սկիզբները երկու հոգեկից հոգեկիր արանց — Սահակայ եւ Մաշտոցի — գործունէութիւնը: Ժիր խումբ մը կղերի մնաց անոնցմէ՝ որն որ հաւատարութեամբ, աստուածպաշտութեամբ եւ աստուածային ուսմամբ պնդակազմ՝ բոլոր երկիրը բանակ մը փոխեց Քրիստոսի՝ տէրութեան մը դէմ ընդդէմ, որուն առջեւ կը սասանէր նոյն իսկ Հռոմէական պետութիւնը:*

*Անոնցմէ՝ դարուց յառաջատութեամբ յառաջ եկան երկու անզուգական Հովիւք՝ Գիւտ եւ Յովհան Մանդակունի անոր եղբօրորդին, առաջին աթոռակալք իրենց աթոռակցաց. որոնցմէ՝ իբրեւ ի կատարեալ մեզի ծանօթ օրինակաց՝ հոս կրնանք չափել թէ ինչ յառաջադիմութիւն եւ ի զօրութիւն եկեր է ուսումը՝ հրամանական* (dogmatique) *եւ բարոյական մասին: Անոր համար այնչափ առաւելութեանց վրայ — որոնց համար «դար ոսկի» կ'անուանենք աս ժամանակը, — պսակ՝ Յովհաննէս կը դնէ:*

*Արդ աստից ժամանակին կ'ելլէ — եւ ոչ անկէ առաջիններուն՝ որոնք Բարսղի պատարագն ընտրեցին եւ գործածեցին, ինչպէս տեսանք, — Խորհրդամատուցաց նոր ընտրութիւն մը՝ ոչ նուազ երջանիկ եւ ճոխ, եւ իրենց օրերէն մեզի հասած, թէպէտ շատ բան դժնեայ ժամանակը նախանձած ըլլայ մեզմէ: Աս վերջինները Բարսղէն հետէ ըստ ժամանակին յառաջացեալ՝ աւելի ուղիղ եկեղեցական նախանձուն եւ վարդապետութեան համեմատ՝ հնական եւ զգուշացուցիչք են:*

*Արդէն շատ չտեւեց Կեսարիոյ եկեղեցւոյն պատարագին՝ վերն յառաջ բերուած հին հայերէն թարգմանութեամբ մի միայն պատարագ ըլլալն Հայոց մէջ. եւ կամ՝ եթէ աստ անդ ուրիշ պատարագներ ալ ի գործածութեան եղած ըլլան, որն որ անհաւանական չէ եւ որուն մէկ նշմարը վերը տեսանք, չմնաց Բարսեղեան պատարագը միշտ տիրող. — Նոյն իսկ ան ատեններն որ Յունական Արեւելքի մէջ ընդհանուր ըլլալ կ'երեւար աս պատարագը: Հայաստան՝* 80 *տարւան գործածութենէն ետքը՝ ուրիշ պատարագ, մանաւանդ թէ շարք մը պատարագաց կը գտնենք փոխանակած, որոնք Բարսղի գործածութիւնը կ'ամփոփեն եւ վերջապէս գրեթէ կը մոռցընեն:*

Աս պատարագներուն, եթէ մէկը մինակ ի բաց առնունք, նոյն իսկ գոյութիւնը մեզի հինգ վեց դարէ աւելի է՝ անյայտ էր մնացեր, սակայն անկէ առջիններուն քիչ շատ ձեռքը պտըտեր է. անանկ որ արտաքուստ անոնց վրայ սակաւաթիւ՝ բայց որոշ ակնարկութիւնքն բաւական են ճշդիւ սահմանելու՝ Հայոց եկեղեցւոյ մէջ գործածութեան սկիզբները։ Ներքուստ ալ ժամանակագրութիւն մըն է — ինչպէս կանխած ենք ըսելու, — նոյն իսկ իրենց հայկական լեզուին մասնաւորութիւնը՝ թէ ասոնք չեն կրնար ըլլալ առոյգ եւ երիտասարդ՝ հապա գոնէ արդէն ի ծերութիւն դիմող դարուն ծնունդը. Ճիշդ հոն տեղուանքը կու գան կը դադրին յիշեալ ակնարկութեանց ամէն թելերը՝ որոնք թէեւ մեր պատարագներէն մէկուն կամ մէկալին համար ըլլան, մի եւ նոյն ատեն բոլորին համար ալ կ'արժեն. վասն զի ամէնուն ալ մի եւ նոյն գրչէ ելած ըլլալը, (Թողունք հիմա պարունակութեան կողմանէ իրար բռնելը,) իրենց քերականական եւ բառագրական բացարձակ նոյնութեամբն արեւու լուսոյն պէս յայտնի է։

Աս չորս Խորհրդամատուցաց երեքը ցայսօր բոլորովին անծանօթք, չորրորդ մ'ալ ըստ ճշմարիտ կերպին բաւական չճանչցուած, գոնէ մէկ հինգերորդի մ'ալ "Հատակոտորներով„ մէկտեղ, կամաց կամաց սուտ՝ բայց փառաւոր անուններով կնքուած են — Գրիգորի Լուսաւորչի, Սահակայ Պարթեւի, Աթանասոյ Աղեքսանդրու Հայրապետի, Կիւրղի Աղեքսանդրու Հայրապետի, Գրիգորի Աստուածաբանի. "Հատակոտորի„ մը համար ալ Սեղբեստրոսի անուններով. — անուններ՝ որոնք ինչպէս հետզհետէ կը տեսնենք, բաց ի մէկէն, բոլորն ալ հոս անհիմն են։ Անոր համար մենք՝ Կեսարիոյ եկեղեցւոյն պատարագը մէկտեղ առնելով եւ զանիկայ Առաջին դնելէն ետքը՝ զատոնք կ'անուանենք Երկրորդ, Երրորդ, Չորրորդ եւ Հինգերորդ պատարագ։

Դժբախտութիւն մըն էր ստուգիւ որ ամէն ժառանգ՝ իրաց ամենայն ծանրութիւնը չիմացաւ, բայց ասոնք ան աղէկ ըրին որ գրեթէ ըստ բոլորին իրենց չսեպհականեցին, իրենց չընծայեցին աս Խորհրդամատոյցները։ Ուստի

1. Մի միայն հոն սխալած են՝ երբ որ Ս. Սահակայ Հայոց Հայրապետին վերագրեցին՝ չգտնելով կամ չգիտնալով բուն տէրը։ Բայց չի կրնար Սահակայ ըլլալ. վասն զի ո՛չ հայերէն լեզուն, ո՛չ մատենագրական լեզուն, ո՛չ պատարագին կազմութիւնը, ո՛չ նիւթոյն կամ պարունակութեան ժամանակագրութիւնը Սահակայ կը վերաբերի, թէպէտ շատ արժանաւոր ըլլայ. այլ ուրիշ ծանօթի մը՝ որուն վրայ ետքէն։

2. Ասանկ ալ երկրորդ պատարագ մը Կիւրղի Աղեքսանդրու Հայրապետին կը վերագրի, բայց բոլորովին անհիմն. պատարագաց հմուտք չէ թէ միայն Կիւրղի եւ ո՛չ հետքը հոն կը գտնեն, հապա եւ ոչ Աղեքսանդրեան պատարագաց սեփհական եղած նշաններէն մին, թէպէտ եւ յունական ծագում ունենայ։

3. Երրորդ մը Ս. Գրիգորի Աստուածաբանի կ'ընծայուի։ Չենք տարակուսիր որ հիներն այնչափ իրաց լիուլի ծանօթութեամբ չէ որ յայսմ ուղիղը խօսած են։ Հազիւ թէ մասնաւոր Երրորդութեան սահմանի կամ կանոնի պէս Սրբոյն խօսքը տեսնելով՝ այսպէս անուանեցին։ Ըստ պատահման՝ պատարագին որուն վերաբերեալ ըլլալը կը նշանակուի աս անգամ անմոլար։

4. Չորրորդ մը մեծին Աթանասի դարձեալ Աղեքսանդրու Հայրապետին անունն ունի, բայց ոչինչ՝ սեփհական համարուածներէն, ինչպէս վերը Թիւ 2 տեսանք. անոր համար մենք իրեն ախորժը կը պահենք դարձեալ։

5. Հինգերորդի մը գոնէ աս կարգէ պատարագներու կը սպասենք ձեռագիրներէն, արդէն ունենալով կարճ կամ երկայն հատակոտորներ նոյն խմբէն եւ նոյն հեղինակէն՝ որուն ի խնդիր ենք, որն որ՝ բարեբախտութեամբ՝ սուտ անուններ չունի. Ճշմարիտը նախընթացներուն հետ պիտ'որ գտնենք:

Եթէ աս վերնագիրները հինական եւ սկզբնական ըլլային, կրնայինք մտածել որ աս պատարագներն այլեւայլ կողմանէ եկած, այլեւայլ ատեն ալ հայերէն թարգմանուած, իրարմէ տարանջատ ըլլան. մանաւանդ որ մենք ալ զասոնք այնպէս իրարու քով գտած չենք, այլ ցրիւ: Բայց չունինք իրաւունք տարանջատ մտածելու զանոնք երբեք. վասն զի հետազօտութիւնք կը ցուցընեն որ մի եւ նոյն թարգմանութեան լեզուն եւ մէկ դպիր մը անանկ ներքնապէս զանոնք կը միաւորէ՝ ինչպէս պիտ'որ տեսնենք, որ գոնէ թարգմանիչը Խորհրդամատուցաց մատեան (Codex liturgicus) մը կազմած է, եթէ յունարէնն արդէն անանկ չէր: Որչափ հեռաւոր վայրեր ցրուած ըլլան, կ'աղաղակեն իրարու ամէն մէկը:

Ցայժմ ոչինչ երեւակայութիւն զմեզ վտարանդի կը տանի. ոչ միայն թարգմանութեան լեզուն, այլ նաեւ գրութեան լեզուն մէկ է, մի միայն է, բոլորը պատարագաց փունջ մըն է, միեւնոյն հեղինակն ունի, որն որ՝ ինչպէս ուրիշ բաներու մէջ, նաեւ աս մեծ Խորհրդեան նկատմամբ սքանչելապէս բեղմնաւոր եղած է ամենայն մասամբք ինք զինք ամբողջացնելով եւ մեկնելով կամ սրբագրելով: Աս է մատենին հնագոյն դրութիւնը. այլ առ ի չգոյէ հարազատ վերնագրութեանց՝ (Ա) Բ, Գ, Դ, Ե թուարկութեամբ իւրաքանչիւր պատարագն յառաջ կը բերենք:

Արդ զասոնք ունեցան եւ քիչ շատ գործածեցին ի պէտս՝ մեր թէ հին եւ թէ հնագոյն Հարք անտարակուսական կերպով, թէպէտ մինչեւ ցայժմ զանխուլ մնացած: Ուստի յայտնի է տրուած պատճառով որ վերը նշանակեալ թիւերուն մէկուն համար յառաջ բերեալ վկայութիւնը մի եւ նոյն ատեն բոլոր մէկալ թուերով նշանակուած պատարագաց դրութեանը կ'արժէ՝ ամէն մէկը բոլորին համար. վասն զի մէկը ունեցողը բնական է որ ուրիշներն ալ ունենայ. որովհետեւ, ինչպէս ըսինք, անբաժին էին ատոնք, մէկ ձեռքէ ելած, մէկ սրբազան Նուիրագործի մը գործ:

Ընդունէ աս մեծ Սրբոյն եւ Վարդապետին իր գործոց պսակին մէջէն կորսուած աս շատ փայլուն մէկ գոհարը:

## 1.

### Նազիանզեան Հաւատացելոց Պատարագները:

1. Վաւերական՝ չէ թէ հնութեան անուամբ ետքէն շինուած՝ պատարագներ առջեւնիս ունինք:

2. Սուտ անունները թօթափելով յայտնի կը նշմարուի թէ հոն մէկ հոգի շնչած, մէկ գրիչ քալած է:

3. Գրիգոր Նազիանզացի է հեղինակը:

4. Մեզմէ քովէ քով դրուածը ատենօք քովէ քով էր. մենք ուրիշ բան չենք ըներ, բայց եթէ վերստին կազմել ցրուած Συναγωγὴ τῶν λειτουργίων. Այնպէս որ՝ կրնայինք զասոնք, եթէ ընդդիմութիւն չունենայինք խոշոր խօսքե-

րու, չիտկէ չիտակ Missale S. Gregorii Theologi անուանել։ Իրեն գործոց մէջ չէ դրուած, causa disciplinae Arcani. Գործոց մթերքէն դուրս չէր կրնար պահուիլ, բայց եթէ հաւաքում մը կազմելով։ Հայաստան ուրիշ կերպ գտնուած չեն ասոնք, բայց եթէ մէկ մատենի մէջ, վասն զի մի եւ նոյն լեզուն եւ գիրն է։

---

## Ա.

### ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԱՐԱԳ

*Ընդհանրապէս՝* 1. *առաջիկայ պատարագաց — որոնք, ինչպէս ըսինք, ի միասին կը գտնուէին, —* [illegible], [illegible], [illegible], [illegible] *թուականութիւնը ուրիշ բան չէ հոս՝ բայց մեր կամայականը. վասն զի ինչ հեղինակութեամբ կրնայինք զանի գտնել. չենք գիտեր սկզբնականն՝ ոչ թարգմանութենէն յառաջ եւ ոչ ետքը։*

*Իսկ ի մասնաւորի՝ աս Երկրորդ պատարագին մենք հոս յառաջադասութիւն չենք տար առանց պատճառաց՝ որ հետեւեալներն են։*

1. *Մեր, թէպէտ մէկհատիկ, հայերէն օրինակին գրեթէ ամբողջութիւնը եւ ամենէն աւելի կատարելութիւնը։*

2. *Անոր Նախերգանին աւելի Դ. դարէն յառաջ, ուստի շատ հաւանականութեամբ Կեսարիոյ Ս. Բարսղի պատարագէն յառաջ գործածուած պատարագին Նախերգանքին բաղմօք համաձայն կարծուիլը։*

3. *Նոյն իսկ Բարսղի պատարագին շատ համաձայն, գրեթէ շատ տեղ անոր մէկ պերճ խմբագրութիւնն երեւնալը։*

4. *Վասն զի Գրիգոր Նիւսացի իր “Կոչման Ընծայութեան„ ճառին մէջ անանկ բան մը խօսելով, բոլորովին համաձայն է այն աղօթքին՝ զորն որ ունի աս պատարագը. ուստի երկուքին աղբիւրն ալ նոյն Կեսարիոյ հնագոյն պատարագը կրնայ ըլլալ։*

5. *Վասն զի Կանոնին մէջ, իբր սքանչելեօք, Քրիստոսի մեծապայծառ օրինակին — խառնեալ բաժակին — վկայութիւնը պահուած է, եւ ան ալ՝ համաձայն Բարսղի. ուստի երկուքն ալ անտարակոյս համեմատ Կեսարիոյ հնագոյն պատարագին։*[1]

6. *Վասն զի հոս գտնուած է ան մէկհատիկ փառաւոր Հրահանգութիւնը ջերմեռանդ հին սովորութեան մը՝ Ձեռա-հաղորդութեան, գործնական մեր Հայոց ալ դեռ ի Ե. դարու։*

7. *Վասն զի աս պատարագէն է որ երկու տեղ Բիւզանդեանցմէ պահուած յունական կտորներ կան։*

---

[1] Աս Կեսարիոյ պատարագին, մեր Լուսաւորչին շատ հաւանականաբար գործածելու (տես էջ 95 եւն) հետ՝ իբրեւ [illegible] վկայ կը լծորդի երրորդ մեծ Կապադովկացին Գր. Նիւսացի յայդ մասին ընդարձակ վկայութեամբ մը “Մեծ Ճառ. Երախայական„ին մէջ (տես Թարգմանեալ ի Հիմ. Ցորր. էջ 215—217), զորն որ Թէոփիանոս ալ կարդաց Ներսէսի Շնորհալւոյ իր Երկրորդ պատգամաւորութեան ատեն, որուն համար, ինչպէս ծանօթ է, կը վկայէ բոլոր ժողովն Սսոյ, եւ թէ կը պատարագէր միշտ ըստ Քրիստոսի օրինակին եւ առաքելական աւանդութեանց։ (Տես Գերապ. Աղեքս. Պալճեան, “Պատմ. Կաթող. Վարդ. ի Հայս„, Վիեննա 1878, էջ 252—253։)

*Մէյ մը ևս պատարագին առաջին աղօթքը, որն որ Ս. Բարսղի պատարագին* προαναφορικὴ *մասին մէջ իբրև երրորդ «աղօթք հաւատացելոց» զետեղուած է։*

*Մէյ մ'ալ խօսքի կտոր մը Կանոնէն՝ որն որ Բարսղի Կանոնին պատուաստուած է։*

*Երրորդ մասնիկ մը մեր պատարագներէն հոս կընանք յիշել՝ զոր որ առած են դարձեալ Բիւզանդեանք, ինչպէս կ'ըսեն, Սերգիոս իրենց պատրիարքը* τρο-πάριον *մը կարգելով Հաղորդութենէն ետքը, որ կ'ըսուի՝ երբ որ սարկաւագունք սպասները դէպ ի սարկաւագատուն կը տանին, առնուած մեր Ն նշանակած պատարագի մէկ յետ-Հաղորդութեան աղօթքէն. (տես վարը։)*

*Աս պատարագը կընայ 370—380ին գրուած ըլլալ՝ մէջի յիշատակուած Անտիոքայ կողմերը երևցած մոլորութեանց դէմ ակնարկութեանց նայելով, և Կ. Պոլիս գործածուած ըլլալ ի Սրբոյն։*

# ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

*(Սրբոյն Սահակայ Հայոց Հայրապետի:)*

---

## (ԱՂՕԹՔ ՈՂՋՈՅՆԻ)

Ը. — *Քահանայն աղաւթէ ի ծածուկ.* Տէր ամենակալ, Աստուած զաւրութեանց, որ արժանի արարեր զմեզ աւրհնել զքո աջաւոր[1] եւ զքաղցր անունդ[2], որ ցուցեր մեզ զմեծ եւ զփրկութեան զքո Միածնիդ զպայծառ զխորհուրդ. հաճեա, Տէր, ընդ տառապեալքս ընդ մեզ, եւ զանարժան զքո ծառայսս արժանաւորեա լինել սպասաւորս եւ պաշտաւնեայս սրբոյ սեղանոյս քո, եւ բաւականս արա զմեզ զաւրութեամբ Հոգւոյդ քո ի սպասաւորութիւնս յայս. որպէս զի անդատապարտ կացեալք առաջի քո մեծի փառացդ, մատուսցուք քեզ պատարագ աւրհնութեան[3], զփառս եւ զպատիւ[4] եւ զմեծ վայելչութիւն սրբութեան քո. որ տաս շնորհս, որ առաքես զփրկութիւն, որ գործականես զամենայն յամենայնի. տուր, Տէր, եւ յաղագս իմոյ յանցանաց զքաւութիւն եւ վասն ժողովրդեանս անգիտութեան[5] զթողու-

Այս Պատարագամատուցիս հրատարակութեան համար մի միակ ձեռագիր ունեցանք առջեւնիս, այն է Լիոնի ձեռագիրը. վասն զի Մխիթարեանները չունին այս կտորը: Վերը դրուած բնագիրն բառ առ բառ ճշդիւ նոյն է Լիոնի օրինակին ընթերցուածոց հետ. միայն ուր ուղղագրութիւն մ'ընել պէտք եղած է՝ չեղած ենք անկէ, բայց ձեռագրին տուած ընթերցումը հոս ծանօթութեան մէջ դրած Լ համառօտութեամբ նշանակելով: ՀՐՏՐ.

Վերնագիրն այսպէս է ի Լ. "Աստուածային պատարագ, զոր արարեալ է սրբոյն Սահակայ՝ Հայոց հայրապետին": Անկէ ետքը սա ընդհանուր խորագիրը կայ՝ "Սկիզբն օրհնոյն Աստուծոյ յորդորէ մինչև ի բերել խորհրդոյն ի սեղանն սուրբ:" — Գլխագիր խորագիրք (Ողջոյն, Նախերգան եւն.) ձեռագրին մէջ չկան, ինչպէս նաեւ Ա, Բ, Գ եւն բաժանմունք:

Ա. ‖[1] Լ "քահ.ն աղօթէ ի ծ.": Աւելորդ է ըսել որ ձեռագիրը շատ տեղ. պատուով կամ համառօտութեամբ կը գրէ, այսպէս՝ քահն., ասրծ., տր. եւն եւն. զորոնք մի առ մի չենք նշանակեր, այլ միայն ուր կարեւոր կ'երեւան: — Լ զօրութեանց: ‖[2] Լ օրհնել: ‖[3 ff.] Լ պաշտօնեայս ... զօրութեամբ Հոգւոյդ քո ... պատարագ օրհնութեան" եւն: Ձեռագիրն ամէն տեղ օ կը գրէ այս բնագրին մէջ, իսկ մենք աւ ուղղագրեցինք միակերպութեան համար. ուստի ամէն անգամ հոս Լի այսպիսի ընթերցմունքը չենք կրկներ. միայն ուր նաեւ ձեռագիրը աւ ունէր՝ նշանակած ենք: ‖[9] Լ զմեծվայելչութիւն

[1]. Սաղմ. ՃԺ. 9. "Սուրբ եւ ահեղ է անուն նորա:"

[2] Սաղմ. ՃԼԴ. 3. "Սաղմոս ասասջիք անուան նորա, զի քաղցր է:"

[3] Սաղմ. ՃԺԵ. 17. "Քեզ մատուցից պատարագ օրհնութեան:"

[4] Սաղմ. ԻԸ. 2. "Մատուցէք Տեառն զփառս եւ զպատիւ:"

[5] Նորէն կը հասկընանք որ աս պատարագը 381էն յառաջ գրուած է. վասն զի Մելիտոսի Անտիոքայ հայրապետի՝ որն որ Կ. Պոլսոյ ժողովոյն առեն մեռաւ, Ս. Գրիգոր դամբանական

*թիւն, լինել ընդունելի պատարագիս մերոյ հաճութեամբ*[6] *առաջի քո եւ սրբութեամբ.*[7] — *ի ձայն.* — *Շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հաւր, միանգամայն կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւոյդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ։*

*Ժողովուրդն.* **Ամէն։**

### ՈՂՋՈՅՆ

**Բ.** — *Սարկաւագն.* **Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան։** [**Որք ոչ կարող էք հաղորդել աստուածային խորհրդոյս, եւ առ դուրս ելէք եւ աղաւթեցէք։** *Ու ողջունեն զսեղանն եւ զմիմեանս: Սարկաւագն.* **Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք, բարւոք կացցուք. եւ նայեցարուք զգուշութեամբ։**

*Ժողովուրդն.* **Առ քեզ, Աստուած։**

*Սարկաւագն.* **Պատարագ Քրիստոս մատչի գառն Աստուծոյ։**

*Ժողովուրդն.* **Ողորմութիւն եւ խաղաղ.**]

*Քահանայն.* **Շնորհքն Աստուծոյ եւ սէրն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ հաւասարութիւն Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսեան**[8]**։**

*Սարկաւագն.* **Ի վեր ամբարձէք սուրբ մտաւորութեամբ զմիտս ձեր։**

*Ժողովուրդն.* **Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ։**

---

սրբութեանն քո։ ‖[11] L ժողովրդեանս անգիտութեանն։ ‖[12] Ընդօրինակութեան մէջ բուն գրուած էր "լինել ընդունելի պատարագիս մեր ոչ հաճութեամբ„ եւն, յետոյ ուղղուած՝ "մերոյ։„ ‖[17] "Ժողովուրդն. Ամէն„ չենք գտներ Lի ընդօրինակութեան մէջ. բայց հեղինակին գործոյն մաքուր ընդօրինակութեան մէջ կար՝ իբրեւ անհրաժեշտ յաւելլի։

Բ. ‖[19] "Որք ոչ կարող էք„ եւն փակագծեալ օտար խօսքը Lի մէջ իբրեւ բուն մասն այս պատարագիս կայ, առանց փակագծի ի հարկէ։ ‖[22] L երկեղիւ կացցուք, բարւոք կացցուք։ ‖[23] L "Դպ. Առ քեզ„ եւն. նոյնպէս տող մ'ետքն եւ ամէն տեղ։ Ուր հեղինակն եւ մենք դրած ենք "Ժողովուրդն„ բառ հնութեան եւ յոյն բնագրաց՝ L միշտ "Դպ.„ կամ Դպիր կ'ըսէ. ուստի ամէն տեղ չենք կրկներ Lի այս ընթերցումը։ ‖[26] L չունի հոս "Քահանայն„ խորագիրը, որ ինքնին կը հասկցուի. յետոյ՝ "Շնորհքն Աստուծոյ † եւ սէրն„ եւն։

մը խօսելով, առ եւ այն աղօթքին խօսքերուն համեմատ՝ կ'ըսէ անոր վրայ. "Թէպէտ եւ մեք ոչ տեսանեմք, յանմատչելիսն է քահանայն (Մելիտոս), ի ներքսագոյն քան զվարագոյրն... եթող զմարմնոյն զառագաստ. ոչ եւս հայելեաւ եւ առակաւ, այլ ինքնադէմ հանդիպի Աստուծոյ եւ մաղթէ յաղագս մեր եւ ժողովրդեանս անգիտութեանց„։ Ասով յայտնի կ'ըլլայ ոչ միայն պատարագին հեղինակութիւնը, հապա նաեւ թէ առ դամբանականն իրաւ Գրիգորի Նազիանզացւոյն է, ինչպէս ունի իրեն մատենագրութեանց հայերէն թարգմանութիւնը, զոր կը կարծենք ի Մովսէսէ Խոր. եղած Ե. դարուն, եւ ոչ թէ Նիւսացւոյն։ Այս աղօթքին յունարէնը, ինչպէս ըսինք, Բիւզանդեանք քիչ մը այլայլութեամբ Բարսղի պատարագին προαναφορική մասին մէջ իբրեւ Երկրորդ աղօթք հաւատացելոց՝ առած պահած են, սկսելով Σὺ, Κύριε, κατέδειξας ἡμῖν...։ Տես վերը՝ էջ 192, Է։

[6] Բարբ. Օրինակն առ բառը չունի։

[7] "Սրբութեամբ„ զանց եղած է յունարէնին մէջ. նոյնպէս հետեւեալ փառաբանութիւնն ալ փոխուած է՝ ուրիշ ձեւ մը տեղը դնելով։

[8] Այս օրհնութիւնը մեր սովորական պատարագին չէ, ուր բառից ամփոփում եղած է, ժողովրդեան պատասխանը կ'ենթադրուի, բայց ներգործութեամբ գրուած չէ։

*Սարկաւագն.* Եւ գոհացարուք զշնորհացն Աստուծոյ[9]:
*Ժողովուրդն.* Արժան եւ իրաւ:

ՆԱԽԵՐԳԱՆ

Գ. — *Քահանայն ի ծածուկ.* Արժան է ճշմարտապէս եւ արդար պատահելոց մեզ յաւիտենական բարութեանցս՝ յաւիտենից շնորհակալութեամբ փառաւորել զքեզ, Տէր եւ Հայր ճշմարտութեան, հաստիչ արարածոց, խնամող եւ հոգացող մարդկան, աղբիւր բարութեան, տուիչ անապականութեան, երանութեանց բաշխող, կենդանարար, կենդանատուր, մեծափառ՝ փառաց տէր, եւ ամենայն բարձրութեանց գեր ի վերոյ, բոլորից հաստիչ, բնաւից ընդունակ, բովանդակ ամենից պաշտպան, եւ ամենայն տեսականաց եւ անտեսից արարիչ: Որ զամենայն յոչընչէ քո Բանիւդ եւ գործակից սուրբ Հոգւովդ ածեր ի լինելութիւն: Դու, Տէր ամենակալ, ի սկզբանէ եւ նախագոյն գոյացուցեր զբնաւս, ի քէն յամենատեղծողէ եւ ի գեղեցկայարմար արուեստողէ[10] լինելութեանցս, զայլ ոք ոչ գիտեմք. որ զանձառելիսն գործականեցեր, եւ զերկիր ի վերայ ջուրց մեղկութեան եղեալ աստուածային քո խորհրդովդ ամրացուցեր. եւ զծովու զահաւոր զանհնազանդ զդիմեցումն չնչին աւազովն սանձեալ՝ յինքն նահանջաբեկել զցասումն ուրնապլեցեր: Միւս եւս դարձեալ հաստատութիւն, որպէս կամար ինչ ի թուլչս, ա-

Գ. ‖[33] Լ պարզապէս՝ "ի ծածուկ.„ չունի՝ "քահանայն:„ — Լ "Արժանի է ճշմարտապէս„ եւն: ‖[35] Լ Հայր ճշմարտութեանն: ‖[36] Լ խնամօղ եւ հոգացօղ ... երանութեանց բաշխօղ եւն: ‖[41] Լ ածեր ի լինելութիւնն: ‖[43] Լի ընդօրինակութեան մէջ նախ ուղղութեամբ գրուած՝ "արուեստողէ.„ յետոյ փոխուած եղած՝ "արեստողէ„: ‖[46] Լ յինքն նահանջաբեկեալ զցասումն

[9] Ինչ որ հոս նոր կայ սա ձեւերուն մէջ՝ ("Ի վեր արարէք սուրբ մտաւորութեամբ զմիտս ձեր ... Եւ գոհացարուք զշնորհացն Աստուծոյ„) երկուքն ալ գրական (biblique) կամ առաքելական բացատրութիւնք են: Վերջինը յոյն լեզուին մէջ բաւական ներդաշնակութիւն մըն ալ կ'ունենայ, ինչպէս լատիներէնի մէջ ալ. Ա. Տիմ. Գ. 9. (ἐν καθαρᾷ συνειδήσει) եւ Ա. Կորնթ. Ա. 4 (εὐχαριστῶ ... ἐπὶ τῇ χάριτι τοῦ Θεοῦ):

[10] Գրիգ. Նազ. Ճառ ԼԸ (ի տօն Յայտն. գլ. Ժ. տպ. Migne, Հատ. Բ. սիւն 322.) Hanc ex coelo et terra et his rebus, quae eorum complexu continentur, coagmentationem et concretionem, laudandam illam quidem, ob singularum partium elegantiam, verum laudabiliorem ob eam, quae ex universis existit, concinnitatem atque concordiam (τῆς ἐξ ἁπάντων εὐαρμοστίας καὶ συμφωνίας), alia re videlicet cum alia quadam pulchre quadrante atque omnibus cum universis, ad unius mundi ornatum omnibus numeris absolvendum. — Ճառ Խ. գլ. 14 սա "Գեղեցկայարմար արուեստողին վրայ ամբողջ հաստատուած կը դառնայ՝ մասանց աշխարհի միաբանութիւնը ցուցընելով. ὁ τεχνίτης (architecta, արուեստող) λόγος τὸ πᾶν συνέτεσε, κόσμος τέ ἐστιν, ὅπερ λέγεται καὶ κάλλος ἀπρόσιτον. Աս ἁρμονίαν, πρὸς ἀλλήλα εὐαρμοστίαν — inter se concinnitatem — վերցընելը՝ Աստուծոյ զմարդիկ պատժելն է ըստ Գրիգորի: Ἁρμονία, εὐαρμοστία բառերուն՝ ան կարգի գրիչները, որոնց մեր չորս պատարագներուն թարգմանն ալ կը վերաբերի, "յարմար, յարմարութիւն, յարմարել„ ձայները գործածած են: — Ս. Գրիգոր, Ճառերէն մէկուն մէջ, կ'երեւայ թէ նախ զՀրեշտակս եւ ետքը զգալացութիւն երեւելի աշխարհի ստեղծուած կը համարի. բայց սա մեր նախերգանքը "ի սկզբանէ եւ նախագոյն գոյացուցեր զբնաւս„ կը սորվեցընէ:

տուածապէս տարածեալ ի յաւդս՝ եւ զնա երկին անուանեցեր։ Յորում եւ զլուսաւորացն՝ զարեգական եւ զլուսնոյ շրջագայութեանն զառ ի տուընջեան եւ գիշերոյ զչափս, անսայթաք ուղեւորել[11] հրամանայրեցեր, զժամանակաց եւ զկենդանեաց զփոփոխմունս ի սոցանէ յայտնապէս ճանաչել մարդոյն ուսուցեր։ Զ՚որ առեալ հող յերկրէ, ըստ պատկերի քում ստեղծեր, թագաւոր[12] եւ տէր ամենայն արարածոց կացուցեր, կեալ միշտ յաղագս[13] պահպանութեան պատուիրանին շնորհեցեր։ Եւ եդեալ զնա ի դրախտին փափկութեան գործել եւ պահել ասացեր։ Ոչ. առ ի տեղւոյն պակասութեանն լրման ինչ կամ զգուշութեամբ[14] պահպանութիւն պատուիրեցեր զայս, Տէր. քանզի ամենայն վայելչութեամբ քո լի էր վայրն այն, այլ գործել զարդարութիւն եւ պահել զպատուիրանն[15], ճշմարտապէս՝ նախագոյն վարդապետեցեր։ Եւ արդ որ այսպիսի պարգեւացս եղեալ մերձաւոր, իսկոյն սուրբ պատուիրանին ցուցաւ անյուշ[16], հրապուրեալ ինքնակամ[17] բարուք ի թշնամւոյն՝ որ խաւսէր ընդ նմա աւձիւն. մահու եւ ապականութեան, ընդ յաւետակցութեան, ինքեան եղեալ առիթ, եւ անարժան դրախտին երեւեալ վայելչութեան, յերկիր՝ ուստի առաւն, դառնալ թողացուցեր։ Թէպէտ եւ առ սակաւ մի վայն ցասմանն սպառնացեալ խրատեցեր, բարերար. այլ դար-

օրինադրեցեր։ ‖ 50 Լ ուղղեւորեալ հրամանատրեցեր։ ‖ 61 Լ մահու եւ ապա-

11 "Շրջագայութիւն... անսայթաք ուղեւորել„ տոութեանը կերպը՝ յունարէն ի ճառն ԼԲ. (արարածք զնոյն ճանապարհ εὐθυνόμενα καὶ περιπορευόμενα, լտ. eamdem viam recto cursu tenentia et circumeuntia)։ Մեր միակ հայ Օրինակին մէջ "շրջագայութեանն„ գրուած է, զոր որ ուղղելով, ինչպէս ուղղած ենք, խօսքին իմաստն երեւան կ'ելլէ, երբ որ ըստ օրինի ալ կիտադրուի։

12 Նազիանզացին կը յիշեցընէ Carm. lib. II. Historica, Sect. II. Poem. VI. creavit hominem... regem terrae et gloriam regis supremi. Դարձեալ ճառ ԽԵ. գլ. 7. (ի Զատ.) In terra collocat... eorum, quae in terra sunt, regem, ինչպէս ըսած ենք՝ նիւթը հոն (այն ճառին մէջ) եւ հոս (մեր պատարագին մէջ) մի եւ նոյն ըլլալով։

13 Գուցէ "ի ձեռն„ թարգմանելու տեղ։

14 Կարդա "զգուշութեան„։ Արդէն Լուգդ. Ձեռագիրն ալ կ'օգնէ առ այս ուղղագրութիւն. վասն զի հոն գրուած է "զգուշութեամբ„։

15 Ծանօթ է Գրիգորի յայտ մասին այլաբանական մեկնութեան ունեցած հակումը թէ նկատմամբ ծառոյն գիտութեան բարւոյ եւ չարի, եւ թէ մաշկեղէն հանդերձից նկատմամբ, թէ "գուցէ թանձրագոյն եւ մահկանացու եւ ապաշխարողական մարմին„ իմացուի։ Ճառ ԼԸ. (ի Ծնն. Քրիստ. գլ. 12.) ուր քիչ մը յառաջ գլ. 11. մեր Նախերգանին վերաբերութիւն ունենալով կ'ըսէ. "Եդ (ի դրախտին) անմահ տնկոց երկրագործ, այս ինքն թերեւս աստուածեղէն խորհրդոց (մտածութեանց) պարզականաց եւ կատարելագունից (տածող)։„ Այսպէս Ս. Հայրը միշտ բան մը չհաստատելով։ Ձեռքերնիս, շատ տարիներ չէ, եկած է հին հայ երկասիրութիւն մը, աւա՜ղ թերակատար, բայց ըղունդէն առիւծ մը տեսնուած, Ծննդոց գրոց դժուարութեանց պատասխանիք։ Եղիշէի անուն կը կրէ։ Բայց տառուգիւ մեր ճանչցածին նման չի կրնար ըլլալ։ Հոն խնդիրներէն մէկն է՝ "Զի՞նչ արդեւք իցէ ասելն թէ Եդ զնա ի դրախտին գործել զնա եւ պահել։ Զգործելն եւ զպահելն ոմանք զօրէն-բութիւնս և ղղարծաժին ժաւայն։ Ակլ ոչ թոյլ տայ նոցա գործելն եւ պահելն ասելով, որ (կարդա՝ զոր) յայտ յանդիմանն դդրախտէն ասէ եւ ոչ զայլ իրաց„։ Ո՞վ չի փորձուիր ըսելու որ աս (դժուարաւ Զ դարուն սկիզբէն անդին ապրող) անունը՝ հօրկաւ այն իսկ մեր պատարագին խօսքերը կ'ակնարկէ։

16 Գուցէ աս հայերէն վսեմ կերպով ըսուածը՝ ըլլայ յունարէն այնպէս, ինչպէս ԼԸ, ճառին մէջ գլ. 12. τῆς ἐντολῆς ἐπελάθετο — լտ. mandati memoriam abiecit։

17 Յոյնն՝ τῷ αὐτεξουσίῳ — arbitrii libertate.

ձեալ յաղագս քո բարեգործութեանդ յերկնային եւ յանապատ յարքայութիւնդ վերածեր։ Եւ արդ ո՞վ բաւականասցի բանիւ ասել[18] զքո ի մեզ զանբաւ բարեգործութեանդ[19] զեղմունս. եւ կամ դրուատիւք եւ հոգեւորական երգովք զքո փառաբանել զաստուածութիւնդ, զոր երկրպագեն[20] հրեշտակք, հրեշտակապետք, տէրութիւնք, աթոռք, իշխանութիւնք, պետութիւնք, զաւրութիւնք, զոր զարհուրեալ աւրհնեն քերովբէք եւ դողացեալ շշնջեն սերովբէք[21]. վասն զի զարհուրմամբ եւ երկիւղիւ երկու թեւաւքն ծածկէին զերեսս իւրեանց՝ ահեալք[22] զառ ի լուսոյն ճառագայթումն հզաւրեղութեան քո, եւ երկու թեւաւքն թռչէին[23] բազում երկիւղիւ, զկարգեալ աւրհնութիւնսն լնուն դոչմամբ, աղաղակեն խորհրդական աստուածաբանութեամբ եւ անհանգիստ ձայնիւք մի առ միս հանդերձ մեւք ասելով. — ի ձայն. — զյաղթական աւրհնութիւնսն դոչելով, աղաղակելով, ասելով՝

*Ժողովուրդն.* Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զօրութեանց. (լի են երկինք եւ երկիր փառաւք քո։)

---

կանութեամբ ընդ յաւէտակցութեամբ ինքեան եղեալ առիթ։ ‖70 L շըշընջէն։ ‖71 L "երկեղիւ." նոյնպէս տող 73։ ‖75 L "մեօք" կ'երեւայ, բայց ընդօրինակութեան վրայ ուղղագրուած է "մեաւք"։ ‖77–78 Փակագծեալը ("լի են երկինք" եւն.) չկայ ի L.

18 Յունական ձայնին ճիշդ թարգմանիչ ըլլալու համար՝ այնպէս "բանիւ ասել" թարգմաներ է. հնագոյնները կը թարգմանէին, ինչպէս Բարսղի պատարագին մէջ տեսանք (էջ 126) "ասել" կամ "խօսել" կամ "պատմել". նոյն թարգմանը ուրիշ պատարագի մը մէջ աւելի կոկիկ նոյն բառը թարգմաներ է "բանիւ բաւանդակել" — լտ. verbis consequi բռնելուն համեմատ։

19 "Բարեգործութեան զեղմունս." Ճառ. ԻԹ. գլ. 2 կը կարդանք աս զօրաւոր բացատրութիւնը ὑπέρχυσιν ἀγαθότητος — bonitatis superfusionem, զեղումն. օրինակի աղագաւ՝ բաժակը զեղուելով դուրս ալ հեղուլը։

20 "Զոր երկրպագեն", հելլենաբանութիւն։

21 Բարսղի պատարագին մէջ քիչ մը պակաս էր ինն դասուց թիւը՝ պակասութեամբ հայերէն Օրինակին. իսկ հոս ի սկզբան մեր ձեռքն ուրիշ բան չըլլալով, բայց եթէ մէկ Օրինակ (Փարիզու), ասոր մէջ "պետութիւնք եւ զօրութիւնք" չենք կարդար. բայց երբ որ անձամբ՝ մի միայն բուն Օրինակին դիմեցինք, ամէն բան ամբողջ տեսանք։ Հմմտ. Ճառ. Գրիգ. Նազ. ԻԸ. գլ. 31. Angelos quosdam et Archangelos scimus, Thronos, Potestates, Dominationes (*Κυριότητας)*, Principatus, Splendores, Ascensus, Intelligentes Virtutes, vel mentes potius, puras naturas, minimeque adulterinas, ad malum immobiles... perpetuos choros circa principem illam causam agitantes... purissimo splendore illinc perfusas etc. Մեր պատարագին թուածը եւ նաեւ կարգաւ են աս հինգ դասերը, եթէ գրչաց սխալմամբ եղած համարինք որ "տէրութիւնք" բառն "աթոռք"էն յառաջ գրուած է։ Նազիանզացւոյն վերջին խօսքին վերաբերութիւն ունի առկէ քիչ մը ետքը եկող պատարագին խօսքը "ահեալք զառ ի լուսոյն ճառագայթումն." յն. ἔλλαμψις — splendoris perfusio.

22 "Ահեալք զառ ի լուսոյն ճառագայթումն" վերը Նազիանզացւոյն յառաջ բերուած խօսքերուն մէջ գտնուող ἔλλαμψις — splendoris perfusio ձայնին թարգմանութիւն, որով կը վարդապետէ ան երկնաւոր հոգիներն ἐλλαμπομένους յառաջին պատճառէ յԱստուծոյ։

23 Մեր ընդօրինակութեան մէջ, ուստի գուցէ բուն Օրինակին (Փարիզու մատենադարանին Օրինակին մէջ ալ) պակաս մասէն զատ, զորն որ վերը յիշեցինք, կը պակսէր նաեւ աս Նախերգանին մէջ "խրատեցեր, բարեբար." այլ դարձեալ Լուգդ. սկզբնագրէն լեցուցինք. բայց չկրցանք մէկալ փոքր մասը լեցընել՝ զորն որ կ'ենթադրենք որ կար հոն սկզբնական վիճակին մէջ՝ "եւ երկու թեւօքն ծածկէին զոտս"։

ԿԱՆՈՆ

Գ. *Քահանայն.* Սուրբ, սուրբ, սուրբ[24] ես ճշմարտապէս եւ ամենասուրբ եւ մեծավայելուչ դու եւ Միածին Որդին քո եւ Հոգին սրբութեան քո. բարձրեալ, ամենակալ, ահագին անուն, փրկական երկրպագութիւն, զարմանազան բարձրութիւն, անչափ մեծութիւն, վերապայծառ լոյս, սուրբ մեծանուն[25] մեծի խորհրդոյս կատարելագործ[26], որ յանապականութիւն զմարդն արարեր, փառաւորաբարձ յերկնի եւ յերկրի եւ զանեղծութիւն ի վախճան յաւիտենից դարձուցանել ի նա խոստացար. մերժեալ զնա յաղագս ստունգանելոյն ի դրախտէն փափկութեան, ընկալար զնա միւանգամ զգլորեալն վասն ընդաբոյս բարերարութեանդ քո, խրատեալ աւրինաւորապէս պատուիրանապրութեամբ. երեւեցար լի՛ շնորհատուր քաղցրութեամբ անտեսանելի մարդկան. անձեցեալ ցանկ մեղականութեան[27], յաճախեցեր զքո յաւէտ բարեգործութիւնդ. արս ընտրեալս, ըստ ժամանակի[28], բարեգործութեամբ արդարացուցեր. աւրէնս ետուր դաստիարակս մինչեւ ի ճշմարտութիւնն. հրեշտակս առաքեցեր յաւգնականութիւն. մարգարէս սուրբ Հոգւոյդ քո արարեր ընդունակս՝ որովք զառ յապա լինելոց աշխարհի փրկութիւնն քարոզեցեր նախագոյն: Իսկ յորժամ եկն լրումն ժամանակին, եւ ամենայն բնութիւն հարեալ ի խայթոցէն մեղաց կործանեցաւ յերկիր յանխնայ, յորում ոչ աւրէնք եւ ոչ մարգարէք եւ ոչ հրեշտակք եւ ոչ այլ ինչ արարած փրկել զմարդկային ազգակցութիւնս յապականութենէ եւ ի մահու զաւրեղութենէ ուժէր, առաքեցեր զՈրդիդ քո. զի զենքեան այցելեալ նորոգեսցէ զստեղծուածն: Որ առաքեալ ի քէն յաշխարհ[29], մնաց ի քեզ

Գ. ‖83–84 L այսպէս կը բաժնէ՝ «վերապայծառ լոյս սուրբ, մեծ անուն մեծի խորհրդոյս» եւն: ‖86 L «մերժել զնա յաղագս ստունգանելոյն» եւն: ‖89 L պատուիրանատրութեամբ: ‖90 L զանձեցեալ զցանկ մեղականութեան եւն: ‖91 L արս ընտրեալս ըստ ժամանակի բարեգործութեան եւն: ‖94 L զառ յապա լինելոյ...: ‖96–7 L «յանխնա. յորում» եւն: — L եւ ոչ հրեշտակ

[24] Երեք կրկնուած «սուրբ» դարձեալ ըստ ասորական սովորութեան, ինչպէս ուրիշ տեղ ըսած ենք. (էջ 181, Ծան. 36:)

[25] Երեմ. ԼԲ. 19:

[26] «Կատարելագործ.» Ճառ ԼԸ. գլ. 8. τελειοποιός — perfector, զորն որ մանաւանդ Հոգւոյն սրբոյ կը ստորոգէ Ս. Գրիգոր, ինչպէս δημιουργός — opifexը՝ Որդւոյն:

[27] «Մեղականութիւն» = παράβασις — praevaricatio.

[28] «Ըստ ժամանակի» = κατὰ χρόνους — secundum tempora.

[29] «Ամենայն բնութիւն... կործանեցաւ... յանխնայ... որ առաքեալ ի քէն յաշխարհ.» Ճառ Խ. ի Մկրտ. (Կ. Պոլիս, 381 յունուար 7) գլ. 45. (factum est) totum hominem, eumdem et Deum, pro toto homine laeso, ut tota peccati condemnatione rescisa, tibi toti salutem afferat. — Ճառ ԻԲ. գլ. 13. Oportebat enim scilicet, posteaquam Deitas unita esset, humanitatem dividi, ac circa mentem homines, alioqui sapientes, insipientes evadere (*περὶ τὸν νοῦν ἀνοηταίνειν, καὶ μὴ ὅλον με σώζεσθαι, ὅλον πταίσαντα καὶ κατακριθέντα ἐκ τῆς τοῦ πρωτοπλάστου παρακοῆς*) meque qui totus cecidi, atque ob primi hominis inobedientiam et diaboli fraudem condemnatus sum, non omni ex parte salutem consequi, ut ita et Dei beneficium et nostra salus imminuatur (առ ճառը 379ին գրուած է:) Ճառ ԼԲ. գլ. 5. գր. 380ին. Multos Christos, (horresco referens,)

անքակ ցանկ եւ նոյնպէս Բան անսկիզբն յանսկիզբն էութենէ՝ սկիզբն տընտեսութեան առեալ ի սուրբ եւ յաստուածածին[30] Կուսէն Մարիամայ յաղագս տիեզերաց փրկութեան. կամաւ ընկալեալ եւ միացեալ ի նմանէն առեցելով մարմնովն՝ եղեւ Բանն երկնային՝ մարդ ըստ մեզ ամենայնիւ, բայց ի մեղաց. որպէս զի բոլորապէս ըստ ամենայնի զմեղուցելոյն մարմին շնչով եւ

---

եւ ոչ այլ ինչ արարածք են։ ||[101] L յանսկզբնէութենէ։ ||[102] L Մարիամու։

pro uno produxit, genitum, creatum, a Maria incipientem, eo unde in ortum prodiit, relabentem, hominem mentis expertem, revera existentem et specie tenus adumbratum. Ի Թղթին Ա. առ Կղեդոնիոս, գլ. Գ. եւն. Unum eumdem profitemur, prius quidem non hominem, sed Deum et Filium unicum, ac saeculis omnibus antiquiorem,...in fine autem etiam hominem, propter salutem nostram assumptum ... terrenum eumdem et coelestem...ut per eumdem totum hominem simul ac Deum totus homo in peccatum lapsus refingatur (*ἵνα ὅλῳ ἀνθρώπῳ τῷ αὐτῷ καὶ Θεῷ ὅλος ἄνθρωπος ἀναπλασθῇ πεσὼν ὑπὸ τὴν ἁμαρτίαν*). Si quis sanctam Mariam deiparam non credit, extra divinitatem est ... Si quis sanctam carnem nunc depositam esse... non autem cum assumpta carne, et esse, et venturam esse (divinitatem) dixerit, adventus illius gloriam non cernat. Ubi enim nunc corpus fuerit nisi cum ea natura, a qua assumptum est? ... Si dimidia tantum ex parte Adamus lapsus est, dimidiatum quoque sit quod assumptum est, et quod salutem accipit; si autem totus peccavit, toti quoque genito unitus est, atque omni ex parte salutem consequitur. Իսկ Թղթ. Բ. առ Նոյն Կղեդոնիոս (Գլ. Դ.) Sane dum hominem atque internam imaginem submovent, id duntaxat nostri, quod deforis est, per novam hanc larvam et aspectabilem speciem mundant, adeo secum ipsi pugnantes, ut nunc quidem propter carnem caetera etiam crasso ac carnali modo exponant ... nunc autem opinionem (*δόκησιν*) potius quam veritatem carnis inducant, tanquam nihil humani passa fuerit, ne earum quidem rerum, quae peccato vacant ... quasi his verbis (Philipp. II, 7) non humana forma (*εἶδος*) significetur, sed fallax quaedam species et opinio (*φαντασίας δέ τινος ἀπατηλῆς καὶ δοκήσεως.*)

Վերը քաղուածին մէջ (զորն որ առ Կղեդոնիոս գրած է Ս. Հայրը կրկին Թղթերով՝ շատ ուրիշ տեղեր նոյնին դարձած է Ս. Հայրը) Թէ՛ մոլորութեանց արդիւնութիւնն ու գումարը, Թէ՛ ըմբռնման կամ գաղափարներուն կերպը. եւ Թէ՛ վերջապէս նիւթոց շարքը, որով անիկայ կը բացայայտէ, ամէնքն ալ հաւաքնթաց են մեր պատարագին առ մասին "Որ առաքեալ ի քէն յաշխարհ„ մինչեւ "ազգի մարդկան„։ Բաւական աչք զարնող նոյնութիւնները, տեղ տեղ գրի տարբերութեամբ, մտադրութեան առի կը ձգենք պատարագի բնագրին մէջ ալ մատնանիշ ընելով։ Ի վախճան կայս Թղթոյն՝ Jam vero quis non eorum eruditionem admiretur, qui cum perspicue ea, quae Christi sunt, dividant, atque illa verba: Genitus est, tentatus est, esuriit, sitivit, fatigatus est, dormivit, humanae parti attribuant; quod autem ab angelis glorificatus fuerit ... et supra mare ambularit, divinitati assignent ... atque illa verba: Angore affectus est et cruci affixus ac sepultus, externi integumenti esse affirment; haec autem: Confidit (*ἐθάρσησε,*) et resurrexit, interni thesauri; cum, inquam, ad hunc modum res Christi dividant, nos tamen criminantur, tanquam duas naturas dissociatas aut inter se pugnantes invehamus, atque eximiam et admirabilem unionem dividamus. (Այս Թղթոյն մէջ առ միութեանց ակզբնաւորութեանբ 30 տարի կը տրուի։) Թէ՛ հոս եւ թէ՛ ուրիշ տեղեր ան արմատական գաղափարը՝ որուն վրայ միշտ կը դառնայ Գրիգոր, երբ որ Ապողինարեանց մոլորութիւններուն դէմ կը խօսի, կ'երեւայ որ Դամասոսի Հռոմայ քահանայապետի առ Պաւղինոս Անտիոքայ եպիսկոպոս գրած Թղթէն նախ իրեն միտքը ցոլացած ըլլայ. Ea haeresis eradicanda est, կ'ըսէ որբագան քահանայապետը, quae postea in Oriente dicitur pullulasse; id est confitendus ipse Sapientia, Sermo, Filius Dei, humanum suscepisse corpus, animam, sensum; id est, integrum Adam; et ut expressius dicam, totum veterem nostrum, sine peccato, hominem. Sicuti enim confitens eum humanum suscepisse corpus non statim ei et humanas vitiorum ... adiungimus passiones; ita et dicentes eum suscepisse et hominis animam et sensum, non statim dicimus eum et cogitationum humanarum subiacuisse peccato.

[30] Յաջորդ կոչումները նոյն իսկ մեր պատարագին առ մասին բառերը կու տան, այս ինքն

*մտաւորութեամբ յինքեան անշփոթ վերաստեղծեալ ապրեցուցէ։ Քանզի որպէս կատարեալ եւ ոչ կիսաբաժ՝ առաջին Ադամն յանցուցեալ՝ յաստուածային շնորհէն եղեւ աւտարացեալ, ըստ նմին եւ երկրորդ մարդն միացեալ ընդ Աստուծոյ Բանին բովանդակապէս ցուցեալ աթոռակից Հաւր. առանց ցնորից, եւ կրեալ ի մարմնի իւրում զամենայն յաղագս մեր, այսինքն զքաղցնուլն, զծարաւումն, զմեռանելն, զյառնելն, զկեանս եւ զանմահութիւն շնորհեաց ազգի մարդկան։ Քանզի դժոխոյ խորտակեաց զդռնութիւնն, բոլոր հաւատացելոց եւ զճշմարտութիւն ճանաչողաց ենթարկել զսա աներկեղապէս միջնորդեաց զէն, անհերքելի[31] զառաջիկայ շնորհեալ զաւուր խորհուրդս զայս։ Վասն զի ի գիշերին՝ յորում կամեցաւ առ աշխարհի փրկատուրն դիմել ի չարչարանսն, առեալ աստուածային եւ անբիծ ձեռաւքն զհացն եւ բեկեալ գոհանալով՝ ասէ.*

ՍՐԲԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

*Ի ձայն.* Առէք կերայք ի սմանէ. այս է մարմին իմ, որ յաղագս ձեր եւ բազմաց բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ Զայս առնիջիք յիմ յիշատակ[32]։

*Ժողովուրդն.* Ամէն։

Ըստ նմին աւրինակի եւ զգինին առեալ, խառնեաց[33], աւրհնեաց †, գոհացաւ, ետ իւրոց ընտրեալ աշակերտացն ասելով.

Առէք արբէք ամենեքեան. այս է արիւն իմ Նորոյ ուխտիս, որ ի վերայ ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ Զայս առնիջիք յիմ յիշատակ։

*Ժողովուրդն.* Ամէն։

Ե. — *Ի ծածուկ քահանայն.* Ի նոյն միշտ կնքեալ զիւր զաստուածային եւ զանփոփոխելի հրամանն՝ Քանզի անգամ եթէ ուտիցէք զհացս զայս եւ զբաժակս ըմպիցէք, զմահ իմ պատմեցէք մինչեւ եկից ես։

‖113 L բոլոր հաւատացելոցս եւ զճշմարտութիւն ճանաչողացս ենթադրել զայս աներկեղապէս եւն։ ‖114 L բուն՝ «զենան հերքելի» եւն։ ‖123 L կը կցէ նախ խորատագիրս՝ «Քահանայն է յայն. Ըստ նմին օրինակի» եւն։ — L «օրհնեաց, խառնեաց †, գոհացաւ» եւն։ ‖128 L չունի հոս՝ «Ժողովուրդն. Ամէն։»

— «աստուածածին Կոյս» — (տե՛ս Կղեմ. Թղթին մէջ նշմարը...) — «բոլորապէս» — «բովանդակապէս» (ὅλως) — «մարմին շնչով եւ մտաւորութեամբ» — «կիսաբաժ» — «առանց ցնորից». — «վերաստեղծեալ ապրեցուցէ» — «աթոռակից» (գիտ՝ որ ըլլայ յունարէնը ἰσόθρονος այսպէս կ'անուանէ Գրիգ. զերրորդութիւն. Ճառ Ձ. 22։)

[31] «Անհերքելի» — ἀήττητον, invictum. Ձ. 39։

[32] «Զայս առնիջիք յիմ յիշատակ» — որն որ աւետարանին յատուկ է՝ ըստ որում կրկնուած թէ մարմնոյն եւ թէ արեան վրայ սրբագործութեան խօսքերէն ետքը զատ զատ — չենք տեսներ ուրիշ վաւերական պատարագի մը մէջ։

[33] «Խառնեաց». տես էջ 138, Ծան. 81։ — Հոս ասանկ † խաչ մը կայ Լուգդ. Օրինակին մէջ, զոր որ կը պահենք։

գաց եւ ամենայն բոլոր ուխտի եկեղեցւոյ քո եւ ամենեցուն՝ որ յաշխարհական կարգէ, արանց եւ կանանց համաւրէն վախճանելոցն։ — Ի ձայն. — Առաւել զամենասրբուհին, զանարատն, զառաւել փառաւորեալ Տիրուհին մեր զաստուածածինն եւ զմիշտ Կոյսն Մարիամ[42]։

### ՑԻՇԱՏԱԿՔ

*Սարկաւագն խունկ ծխէ,*[43] *եւ*

*Քահանայն ի ծածուկ.* Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զմեզ զյիշատակողքս քոց սրբոցն պարուց, եւ ընդ նոսին ի յարկսն յաւիտենից արժանի արա։ Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զմատուցողս ընծայիս այսորիկ եւ վասն որոյ մատուցեալն, եւ փոխատրեա նոցա ընդ անցաւորիս զանապական տեղի հանգստեանն. եւ ընդ երկրաւորիս՝ զերկնաւորդ։ Յիշեա, Տէր եւ ողորմեա եւ աւրհնեա զպտղաբերիչս սուրբ եկեղեցւոյ քո, եւ որք առնեն յաղքատս ողորմութիւն. բազմացո ի նոսա զհարստութիւն արքայութեան քո։ Նա եւս առաւել մատուցեալ մաղթեմք զքեզ վասն խաղաղութեան եւ բարեհաստատութեան[44] ամենայն աշխարհի եւ սրբոյ եկեղեցւոյ քո՝ զոր քոյին Միածնի արեամբ սեպհականեցեր, անսասան զսա եւ անշարժ բոլորեցունց յամենայն տեղիս շնորհեա. քահանայից՝ վարդապետութիւն առողջ եւ կենցաղ անայպանելի. Թագաւորաց՝ ուղղափառ իմաստութիւն, դատել զժողովուրդս քո արդարութեամբ եւ հեզութեամբ. ժողովրդոց՝ աստուածային երկիւղիւ հնազանդութիւն եւ անընդդիմակացութիւն. հերձուածողաց՝

‖169—70 L զյիշատակօղքս քոց սրբոցն պարուցն։ ‖171 L արայ ...զմատուցօղս։ ‖175 L ... յաղքատս ողորմութիւնն, բազմացոյ։ ‖177 L լուսանցքի վրայ († նշանով նշանակելով բնագրին մէջ տեղը) աւելցուցեր է "եւ բարեհաստատութեանն" խօսքը։ Քիչ մ'ետքը՝ L "եւ ---ցէ եկեղեցւոյ քո"։ ‖178 L սեփհականեցեր։ ‖182—90 L "աստուածային երկեղիւ հնազանդութիւնն եւ անընդդիմացութիւնն.

42 Աս ձեւը՝ որն որ հոս քահանային կ'ընծայուի, կ'ընդհատէ հոս հին աղօթքը. եւ իրօք՝ սարկաւագին տրուած է յաջորդ պատարագին մէջ, ուրիշ յանուանէ յիշատակելի սրբոց հետ։ Բայց աս սրբոց՝ հրեշտակաց եւ մարդկան Թագուհւոյն ընծայուած փառաւոր եւ իրեն անհամեմատ անանցմէ գերազանցութիւնը ցուցընող ձեւը, ամենեւին չենք տարակուսիր, մեր հայրք Ե դարու վերջերը կրնային գործածել. նոյն իսկ հայերէն թարգմանութիւնը հնութիւն մը կը ցուցընէ։ Շատ կանուխ աս ձեւը յունական Արեւելքին մէջ ընդհանուր տեսնելով — վասն զի չէ թէ միայն Բիւզանդեան պատարագները նոյնն ունին, հապա նաեւ Երուսաղէմինը այսինքն Յակոբայն եւ Աղեքսանդրիոյ որ է՝ Մարկոսինը, — պէտք կ'ըլլայ ենթադրել որ մասնաւոր հրաման մը կամ միաբանութիւն մը (օրինակի աղագաւ՝ "Ոչ որ արժանի է" աղօթքին եղածին պէս) այնչափ ընդհանուր ըրած ըլլայ աս գեղեցիկ ձեւը, որն որ՝ չենք գիտեր, ինչպէս, մեր մէջը խափանուեր է։ Յոյնը՝ Ἐξαιρέτως τῆς παναγίας, ἀχράντου, ὑπερευλογημένης, ἐνδοίξου δεσποίνης ἡμῶν θεοτόκου καὶ ἀειπαρθένου Μαρίας.

43 Խորանը՝ որ հոս սարկաւագը խունկ ծխէ, անշուշտ սրբոց աղօթքին վերաբերութիւն ունի ըստ Յայտնութեան Գլ. Ը. 3, 4։

44 "Բարեհաստատութիւն," նիւթական թարգմանութիւն յոյն ձայնին εὐστάθεια, որն որ ուրիշ պատարագի մէջ թարգմանուած է հայերէն՝ "հաստատութիւն," ինչպէս սովորութիւն է առ հասարակ՝ միշտ մասնաւոր առմամբ մը եւ վերաբերելով յունական բառին տրուած բազմադէմ իմաստին։

ուղղահաւատութեան ծանաւթութիւն. բարբարոսաց՝ իմացումն անվայրենութեան[45]. որք յուղղափառութեան են ժողովուրդք՝ յառաջագիտութիւն[46] եւ պայծառութիւն. աւդոց՝ բարեխառնութիւն. պտղոց՝ բարեբերութիւն, ախտացելոց ի պէսպէս ցաւս փութապէս առողջութիւն. որք ի դառն ծառայութեան են եւ յաշխարհի վտանգս՝ ազատութեամբ արձակումն. բանդարգելոց՝ հանումն. հաւատացելոց՝ հաստատութիւն. անհաւատից՝ զղջումն. կուսանաց՝ ժուժկալութիւն. ամուսնացելոց՝ հանդերձ պարկեշտութեամբ՝ տնաբարութիւն. վտանգելոց ի ծովու՝ ակնարկութիւն փրկութեան. զի ամենայն զգայուն եւ անզգայուն, բանաւոր եւ անբան հնազանդին քում հրամանիդ: Տէր, Աստուած մեր, ամենայն յամենայնի. այրեաց՝ վերակացու. որբոց՝ հայր. ծերոց՝ նեցուկ. երիտասարդաց՝ խրատ. տխրելոց՝ սփոփութիւն[47]. կերակուր՝ քաղցելոց, եւ աղբիւր՝ ծարաւեաց. անդորրութիւն՝ նեղելոցս. ճանապարհ՝ մոլորելոց. վասն զի դու ես ճանապարհ եւ ճշմարտութիւն: Այցելեա զեւրաքանչիւրոցն պէտս, եւ արժանի արա զմեզ երեւել մանկունս խաղաղութեան եւ ժառանգաւորս աստուածային եւ երանելի ձայնին կոչմանն այնորիկ՝ որ ասէ. Եկայք աւրհնեալք Հաւր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն ի սկզբանէ աշխարհի. որում լիցի ամենեցուն մեզ արժանի լինել. — ի ձայն. — շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչիդ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հաւր միանգամայն հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտ.:

Ժողովուրդն. Ամէն:

Բ. — [Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ընդ ամենեսեան[48]:]

---

հերձուածողաց ուղղահաւատութեան ծանօթութիւնն. բարբարոսաց իմացումն անվայրենութեանն„ եւն: Նոյնպէս յաջորդներու մէջ յաճախ է աւելորդ ն յօդն, այսպէս L՝ "օդոց բարեխառնութիւնն, պտղոց բարեբերութիւնն. ախտացելոց ի պէսպէս ցաւոց փութապէս առողջութիւնն... ազատութեամբ արձակումնն... հաւատացելոց հաստատութիւնն... կուսանաց ժուժկալութիւնն... վտանգելոց ի ծովու ակնարկութիւնն փրկութեան„ եւն: ‖193–4 L սփոփութիւն... անդորրութիւնն: ‖204 L չունի՝ "Ժողովուրդն: Ամէն:„

45 "Բարբարոսաց՝ իմացումն անվայրենութեան„ բոլորովին տեղական պէտք մը կ'ակնարկէ, վասն զի Գրիգորի հայրենեաց (Պոնտոսի, Փոքր Հայաստանի եւ այլ գաւառաց) բարբարոսաց յարձակմունք սովորական էին, ինչպէս Գրիգորի Սքանչելագործ Նէոկեսարիոյ եպիսկոպոսին կանոններէն (կամ կանոնական թղթէն), Գրիգորի Նիւսացւոյ այլեւայլ տեղ գրածներէն եւ Ոսկեբերանի աքսորքէն գրած թղթերէն ծանօթ է:

46 "Յառաջագիտութիւն„ ճիշդ այսպէս է Լուգդ. մատենին մէջ. կ'երեւայ թէ յունարէնն եղած ըլլայ πρόγνωσις իբրեւ "յառաջատեսութիւն„ ինչպէս յաջորդ պատարագին համեմատութենէն ալ կրնայ հասկցուիլ՝ մի եւ նոյն տեղ գրուած ըլլալով "խոհեմութիւն„ = φρόνησις, prudeutia.

47 "Սփոփութիւն„ Լուգդ. մատենին մէջ "սփոթութիւն„ — ἀθυμῶν τὴν παραγαθίαν, Ճառ. Խ. ի Մկրտ. in maerore versatis solatium.

49 Ասիկայ ճիշդ այս ձեւով՝ ոչ այս պատարագին եւ ոչ ալ յաջորդ պատարագներէն մէկուն կը վերաբերի. հապա մեր սովորական կամ

*Ժողովուրդն.* Եւ ընդ հոգւոյդ քում:

*Սարկաւագն*[49]. Միաբան երկրպագելով գովութիւն եւ փառս վերառաքեսցուք ի բարձունս ամենասուրբ Երրորդութեանն, հաւատացեալ ժողովուրդք, յաղագս երկնային եւ անճառ զենմանս այսորիկ՝ որ ի վերայ սրբոյ սեղանոյս, զոր շնորհեաց մեզ ի փրկութիւն բարեգթութեամբ իւրով Հայրն փառաց:

Խնդրեսցուք աներկբայ հաւատով[50] ի մարդասիրութենէն (Քրիստոսի) զանշարժ զխաղաղութիւնն շնորհել եկեղեցւոյ իւրոյ, եւ պահել հաստատութեամբ ի գովեստ անուան իւրոյ, եւ պարգեւել մեզ զեպիսկոպոս մեր երկայն աւուրբք, սրբութեամբ եւ արդարութեամբ հովուել զժողովուրդ իւր՝ զոր գնեաց պատուական արեամբն իւրով:

Եւ եւս վասն հոգւոցն հանգուցելոցն աղաչեսցուք զառատապարգեւ սուրբ Հոգին՝ որ է բարեխաւս ամենայն հաւատացելոց, զի շնորհեսցէ հոգւոցն հանգուցելոց մասն եւ բաժին յերկնային լուսաճեմ խորանսն, վերինն Երուսաղէմի[51], եւ զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեանն իւրոյ, ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ եւ ողորմեսցի:

*Ժողովուրդն.* Կեցո Տէր:

Թ. — *Քահանայն ի ծածուկ ասէ.* Նորոգեա[52] զմեզ, Աստուած Հայր, որ քոց արարածոց ես նորոգիչ, յաղագս ընծայութեան[53] Բանիդ քո Յիսուսի

Ը. ‖205–6 Փակագծեալը L-ի մէջ լուսանցքի վրայ գրուած է մանր գրով, բայց "ընդ ձեզ ընդ ամենեսեան" չկայ գրուած հոն՝ իբրեւ ծանօթ. ամբողջութեան համար գրուած է վերը: Անկէ ետքը L ուղղակի կը կցէ՝ "Սրկն. Միաբան" եւն. ուստի չկայ՝ "Ժղվրդն. Եւ ընդ հոգւոյդ քում:" ‖208 L զփառս վերառաքեսցուք: ‖211 L շնորհեաց մեզ ի փրկութիւնն: ‖215 L "զեպիսկոպոսս մեր" եւն: ‖218 L "հանկուցելոցն աղաչեսց" (այսպէս): ‖220 L "հոգւոցն հանգուցն" (այսպէս): ‖223 L կեցոյ:

Ն պատարագին Բիւզանդեան յաւելուածներէն հոս բերուած է: Նախնականը կրնայ պարզ "Խաղաղութիւն ընդ ամենեսեան" մ'ըլլալ, իրեն Պատասխանովը ժողովրդեան կողմանէ: Տես վերը Առաք. Սհմնդր. Ը. գրքին մէջինը:

49 Ա՛ս կանոնէն ետքը սարկաւագին կարճ, բայց 3 բաժնուած συναπτήին համար տես ընդհանուրին մէջ խօսուածը: Հոս անանկ Երրորդութեան ուղղուած է որ ամէն մէկ անձին մէյ մէկ մասնաւոր խնդրուածք կ'ըլլայ, Նազիանզացւոյն հանճարին համեմատ. ուստի երկրորդ բաժնին մէջ "ի մարդասիրութենէ"ն կ'ուզէնք կարդալ կամ "ի մարդասիրէն Քրիստոսէ" կամ "ի մարդասիրութենէն Քրիստոսի:"

50 "Աներկբայ հաւատով" = τῇ ἀνενδοιάστῳ πίστει. Cyrilli Catech. myst. V. 20.

51 "Լուսաճեմ խորանք վերինն Երուսաղէմի", շատ սովորական Նազիանզացւոյն: Անկէ "ի լուսաճեմ խորանսն" շարականաց մէջ: Հմմտ. "Որահ գործեալք ի լուսաճեմ... ի խորանս":

52 Ա՛ս որչափ վսեմ, նոյնչափ օծութեամբ լեցուն աղօթքին գոյացութիւնը անշուշտ ան Թեմերուն մէջ կար ի վաղընջուց: Աստուածաբանն ուրիշ բան ըրած չէ, բայց եթէ գուցէ մէկ կամ երկու ձայնից յաւելմամբ աւելի ողորկած ըլլայ: Չի կրնար երկբայուիլ որ Ս. Գրիգոր Նիւսացի (Նիւսիայի եպիսկոպոս) այն աղօթքէն առած՝ իր Մեծ Կոչման ընծայութեան գրքին սուրբ Հաղորդութեան խորհրդոյն վրայ հետեւեալ խորհրդածութիւնները կ'ընէ՝ իրեն խորհրդական-փիլիսոփայական ոճովը. (Գլ. ԼԷ.) „Cum id gustavimus, quod nostram dissolvit naturam, rursus necesse est, ut opus habeamus eo quod cogit ac conciliat, quod erat dissolutum ... Quid hoc ergo est? Nihil aliud, quam illud corpus, quod et morte ostensum est potentius et no-

*Քրիստոսի փրկչին մերոյ, եւ զաւրութեամբ Հոգւոյդ սրբոյ. եւ զընաւ զբոլոր բնութիւնս պատուրեալ ի նոր Թրումն[54], յաւրինեա, խմորեա[55] սուրբ խմորով պատուիկ առ անապական կեանսդ, եւ զողորմութեան պարգեւս անարատ ի մեզ պահեա միշտ, բարերար Տէր, զոր ոչ արեան եւ ոչ մարմնոյ կամ առն ծնեան կամք, այլ քո Միածնիդ ջրով եւ սուրբ Հոգւովդ նորս զմեզ գործականեաց հոգւովն[56] որդիս։ Աստի միոյդ Միածնիդ Հայր[57] — ի ձայն աւէ քահանայն — եւ մեզ շնորհեա համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր, գոչել առ քեզ եւ ասել։ — Սկսանին ասել —*

---

strae vitae fuit initium. Quomodo enim parum fermenti, ut dicit Apostolus (I. Cor. V. 6), sibi assimilat totam conspersionem (*ὅλον φύραμα πρὸς ἑαυτὴν συνεξομοιεῖ,*) ita corpus a Deo morte affectum cum fuerit intra nostrum, totum ad se transmutat et transfert in suam naturam.

53 «Յաղագս ընծայութեան». յաղագս՝ հոս ալ է յետոյ = *διὰ*, per ըսել ուզէ։ — «Ընծայութիւն» իբրեւ *παρουσία* կամ *ἐπιδημία* կամ *ἐνδημία* = գալուստ, ներկայութիւն. ուստի բոլորը «ի ձեռն գալստեան կամ գալստեամբ» = *διὰ τῆς παρουσίας*, (պատարագ Մարկ. 163,) per adventum, per praesentiam. Կարծեմ թէ հոս ուրիշ եղած է մեր թարգմանիչը. եթէ բառ մը միայն հոս չըլլար, չէր կրնար ամենեւին ցայտակայր գրով գրչին ընծայուիլ, հապա Ն դարուն առաջին կէսին մէջ գրողի մը։

54 Աղօթքին խօսքերուն մէջ «Նոր Թրումն.» ուրիշ բառով «Նոր զանգուած,» նոյն իսկ մարդեղութիւնն է, Բանին մարմնաւորութիւնը, սուրբ Խորհուրդը. «խմոր» ըսուած է՝ զմեզ նոյն զանգուածոյն մէջ խառնելու խորհրդական կերպով։ Ահաւասիկ «Նոր Թրումն» նոյն առմամբ Նազիանզացւոյն քով Թղթ. առ առ Կղեդոնիոս Գլ. Ժ., Ապողինարեայց դէմ՝ որոնք կարելի կը համարէին որ Բանին հետ մարդկային մարմին միանայ, բայց անկարելի կը կարծէին թէ բանական հոգին միանայ. Si lutum fermentatum est, o sapientes viri, ac nova conspersio exstitit, imago ipsa non fermentabitur, et cum Deo temperabitur, per divinitatem deificata? Յայտնի է որ հոս «խմոր» ձայնը նախնաբար յունական եկեղեցւոյ մէջ խմորուն թէ բաղարջ կամ խառն երկուքն ալ իբրեւ որոյ պատարագի նիւթ գործածուած ըլլալուն՝ ոչինչ յարաբերութիւն ունի. առ նկատմամբ խնդիրները կը թողու statu quo մինչդ այնպէս, ինչպէս Մեղքիատէս եւ Սիրիկոս քահանայապետաց նկատմամբ Liber pontificalisին մէջ յիշուած fermentum անունը՝ պարզապէս սուրբ Հաղորդութիւնը կը նշանակէր շատ մօտաւոր եկեղեցեաց առն օրեր խաւրուած, ինչպէս որ Իննովկենտիոս Ա. Թղթ. առ Դեկենտիոս Գլ. 9. բացայայտ կ'ըսէ. De fermento, quod die dominico per Titulos mittimus,... quarum (ecclesiarum) presbyteri, quia die ipsa propter plebem sibi creditam nobiscum convenire non possunt, idcirco fermentum a nobis confectum per Acolytos accipiunt, ut se a nostra communione maxime illa die non judicent separatos; quod per parochias fieri debere non puto, quia non longe portenda sunt Sacramenta. Տես Լաւոդ. Կանոնք։

Պետրոս Գուստան (Coustant) Թղթ. քհնյպ. Հռոմայ (Հատ. Ա. էջ 857) եւ Բենեդիկտոս ԺԴ (De Sacr. Missae) շատ յարմար կը համարին խմորոյ անուանակոչութիւնը՝ նաեւ Եւլոգիոյ ըր-բագործեալ որոյ Հաղորդութեան նկատմամբ. վասն զի ինչպէս խմորն ալեր խառնելով բոլոր ալիւրն խմորել կը յարէ, այնպէս ալ Ս. Հաղորդութիւնը եկեղեցւոյ միաւորութեան զօդն է։

Մեր աղօթքը վերջապէս ըստ մասին համեմատութիւն մ'ունի առ խօսքին իմաստին։ Առաք. Սհմնդր. Է. գրքին 25դ գլխի մէջինը *Εὐχαριστοῦμέν σοι, πάτερ ἡμῶν,* որուն մէջ առ խօսքերը կուգան *ὥσπερ ἦν τοῦτο διεσκορπισμένον, καὶ συναχθὲν ἐγένετο εἷς ἄρτος, οὕτω συνάγαγέ σου τὴν ἐκκλησίαν* եւ այլն։ Յաջորդ պատարագներուն նկատմամբ համեմատութիւնը տես վարը։

55 «Խմորեա» կ'ուզէինք կարդալ «խմորեալ»։

56 «Հոգւովն». այս ինքն՝ «ըստ հոգւոյ» = *κατὰ ψυχήν*.

57 «Միոյդ Միածնիդ Հայր.» Գրիգ. Նազիան. Ճառ ԻԵ. գլ. 15. «Կ'ըսենք *ἀληθῶς πατέρα τὸν πατέρα καὶ πολύ γε τῶν παρ' ἡμῖν ἀληθέστερον, ὅτι μόνως, ἰδιοτρόπως γὰρ καὶ οὐχ ὡς τὰ σώματα, καὶ μόνος, οὐ γὰρ μετὰ συζυγίας· καὶ μόνου, μονογενοῦς γάρ* — Զհայր ճշմարտապէս ասեմք հայր, եւ առաւել եւս ճշմարիտ քան որ առ մեզ հարքն են. քանզի է միով եւեթ օրինակաւ. զի առանձինն իմն օրինակաւ եւ ոչ որպէս մարմինքն, եւ մի միայն ինքն՝ վասն զի չէ

### ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂԱՒԹՔ

*Հայր մեր, որ յերկինս ես, սուրբ եղիցի։*

*Քահանայն. Վասն զի քո է արքայութիւն եւ զաւրութիւն եւ փառք յաւիտ.։ Խաղաղութիւն † ընդ ամենեսեան։*

*Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք։*

*Ժողովուրդն. Առաջի քո, Տէր։*

### ԽՈՆԱՐՀՄԱՆ ԱՂԱՒԹՔ

Ժ. — *Սարկաւագն. Պրաւսխումէն։*

*Քահանայն վերացուցանէ եւ ասէ. Սրբութիւնք սրբոց վայելեն։*

*Ժողովուրդն. Հայր սուրբ, Որդի սուրբ, Հոգի սուրբ։ Աւրհնութիւն Հաւր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն այժմ։*

ԺԱ. — *Քահանայն. Աւրհնեմք զկենդանարար եւ զսուրբ զաւրուստ քո, Միածին Որդի Աստուծոյ Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, եւ աղաչեմք՝ զոր եթէ կամաւ ինչ եւ ակամայ մեղուցեալ իցեմք, ներեա եւ թող մեզ բարերարութեամբ եւ շնորհաւք սուրբ մարմնոյ քո եւ արեանք քո։ Զի սա է հացն կենդանի՝ որ ի յերկնից իջեալ, զորմէ ասացեր՝ Մարմին իմ է, զոր ես տաց վասն կենաց աշխարհի. զի մարմին իմ ճշմարիտ կերակուր է եւ*

---

Թ. ‖[237] L ընդ ամենեսեան։ ‖[239] L "Ժող. Առաջի քո, Տէր։" Անկէ ետքը L ձեռագիրը հոս իբրեւ Պատարագի մաս կը դնէ այն երգը՝ զոր ձեռագիրք սովորաբար Թոխմոյի առաքելոյ անուամբ կը ներկայացընեն, եւ զոր վերը դրինք, (տես էջ 169—170։) Սակայն թէ ամբողջութեան համար եւ թէ L-ի տարբեր ընթերցուածոցն համար հոս կը դնենք ճիշդ այնպէս՝ ինչ ձեւով Պատարագիս մէջ մտած է։ L կը կցէ վերնոյն՝ "Քահանայն ի ծածուկ ասէ. Մարմին քո անապական սա լիցի մեզ ի կեանս եւ արիւն քո ի թողութիւնն մեղաց. փոխանակ լեղոյն զոր արբուցին քեզ վասն մեր՝ բարձցի ի մէնջ ղեղի թշնամւոյն. վասն քացախոյն զոր ճաշակեցեր ընդ մեր՝ տկարութիւնս մեր զօրասցի. եւ վասն թքոցն զոր առեր վասն մեր՝ ընկալցուք մեք զցօղ անմահութեանն. եւ վասն հարուածի եղեգանն զոր հարար վասն մեր՝ ընկալցուք մեք զկատարեալ կեանս. եւ ընդ փշեղէն պսակին զոր եդին քեզ վասն մեր՝ ընկալցուք մեք զանթառամ պսակ սիրոյ քո. եւ փոխանակ պատանոյն քեզ պատատակալաւ վասն մեր՝ զօրութեամբ քով պնդեսցուք մեք. եւ զի թաղեցար ի նոր գերեզմանի՝ ընկալցուք մեք դարձեալ զնոր յաւիտեանն որ ի քէն եղեւ. եւ վասն յարութեան քո որ ի մեռելոց եղեւ զի եւ մեզ եղիցի յարութիւնն ի կեանս. եւ ի սուրբ դատաստանի քում կացցուք առաջի քո եւ գոհութեամբ փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր եւ ընդ Հոգւոյդ սրբոյ, այժմ։" Առոր կը կցուի L-ի մէջ՝ "Ի յոյն. Քրիստոսի Յիսուսի Տերամբ մերով, ընդ որում քեզ Հոգւոյդ սրբոյ եւ Հօր ամենակալի վայելէ փառք, իշխանութիւնն եւ պատիւ։ Սարկաւագն. Պռաւսխումէն։ Քահանայն վերացուցանէ" եւն. (տես վերը՝ Ժ եւն։)

Ժ. ‖[244] Հոս կը կցէ L սա ստուգիւ յետասմուտ կտորը՝ մեր սովորական պատարագէն քաղելով. "Քահանայն. Օրհնեալ Հայր սուրբ. օրհնեալ Որդի սուրբ. օրհնեալ Հոգի սուրբ. օրհնութիւն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ. Քահանայն. Օրհնեմք զկենդանարար" եւն. (տես վերը՝ ԺԱ։)

ԺԱ. ‖[248] L ալ "եւ արեամբ քո." բայց լուսանցքին վրայ՝ "արեան" ուղ-

արիւն իմ ճշմարիտ ըմպելի. որ ուտէ զմարմին իմ, եւ ըմպէ զարիւն իմ, նա ի յիս բնակեսցէ եւ ես ի նմա. եւ որպէս առաքեաց զիս կենդանին Հայր, եւ ես կենդանի եմ վասն Հաւր, եւ որ ուտէն զիս՝ եւ նա կեցցէ վասն իմ: Արդարեւ այս է հացն կենդանի՝ որ ի յերկնից իջեալ, որով ունիմք զկենդանութիւնն աստուածային եւ զհաղորդ բնակցութեանն[58] ընդ քեզ, Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս: Աովաւ հաճեսցին կամք ողորմութեան քո ի մեզ՝ արժանաւորել սմա անարատապէս ի հաճոյս քո. եւ ուրախացեալ ցնծասցուք յաւուր գալստեան քո, ուր զուարճանալոց են ամենայն ընտրեալք քո, յորժամ յայտնեսցի ի յերկնից ահաւոր Թագաւորութիւնն քո, եւ հաստատեսցես յանվախճան եւ յանպատում ի կեանս ամենայն անձկացելոց քոց զգերաշխարհիկ[59] զփրկութիւնն, եւ յայտնի լիցին պարծանք հաւատացելոցս ի քեզ, Քրիստոս Աստուած մեր, ի ձեռն սուրբ մարմնոյ եւ արեան քո. զի դու ես Աստուած յաւիտենական եւ Թագաւոր հզաւր, եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ:

*Սարկաւագն. Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի մերում. ալէլուիա:*

*Քահանայն բաշխէ զփրկական մարմինն, եւ արկանէ մասն ի բաժակ արեանն ասելով.* Լրումն Հոգւոյն սրբոյ:... (Քահանային ըսուցել կը տրուէ ճաշակելէն առաջ. Հաւատով ճաշակեմ զկենդանատու եւ զփրկագործ[60] մարմին Քրիստոսի ի թողութիւն մեղաց իմոց. եւ ի բաժակն մերձեցեալ՝ Հաւատով ճաշակեմ զսուրբ եւ զմաքրիչ արիւն Քրիստոսի ի թողութիւն մեղաց իմոց:)

---

ղուած: ‖251–3 L նայ յիս բնակեսցէ եւ ես ի նմայ... եւ նայ կեցցէ եւն: ‖257 L արժանաւորել սմա եւն: ‖264 Աղօթքիս (Հմծ. ԺԱ.) ծայրը L կը կցէ սովորական պատարագէն քաղուած կտոր մը, եւ յետոյ խորատագիր մ'այսպէս. "Քահանայն է ըսյն ասէ. Ի սուրբ մարմնոյ եւ յարենէ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ որ իջեալ բաշխի ի միջի մերում. կեանք է, յարութիւն, քաւութիւն եւ թողութիւն մեղաց. սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ, սաղմոս ասացէք երկնաւոր թագաւորիս մերոյ անմահի որ նստի ի կառս քրովբէականս: Նոյն խորհրդածութիւն է սոյա որպէս եւ Սրբոյն Աթանասիոս: Քահանայն եւ սարկաւագն եւ դպիրն. Քրիստոս պատարագեալ... ալէլուիա" եւն. (տես վերը:) ‖266–270 Այս կիտադրեալ տեղը L ձեռագիրն երկար աղօթք մ'ունի՝ զոր իբրեւ անյարմար այս տեղւոյ ուստի եւ օտարամուտ՝ դուրս թողուցած է հեղինակը բնագրին մէջ հոս չդնելով. եւ միայն քաղելով քանի մը խօսք՝ փակագծի մէջ զետեղուած: Ամբողջութեան համար կը դնենք հոս այս աղօթքն այնպէս՝ ինչպէս ունի ձեռագրին ընդօրինակութիւնը. բայց

զուգաւորութեամբ, եւ միոյ՝ քանզի Միածնի." (լտ. unius Unigeniti enim.)

[58] "Զհաղորդ բնակցութեան" — կամ այսպէս, ինչպէս կը կարդանք Լուգդ. մատենին մէջ՝ բոլորը մէկէն նախընթաց "զկենդանութիւն" ձայնին յատկացուցիչ առնելով. եւ կամ "զհաղորդութիւն բնակցութեան," կամ վերջապէս "զհաղորդ բնակցութիւն:" Կ'ընտրենք Լուգդ. մատենին հաւատարիմ մնալ: "Բնակցութիւն" Նազիանզացւոյն առէջ գործածած συμφυία. Հմմտ. Դ. գլ. 52. Per quod (incruentum sacrificium) nos Christo ipsiusque passionibus et divinitati communicamus.

[59] "Գերաշխարհիկ" = ὑπέρκοσμος, supermundus. Հայկազն. Բառգիրքը ունի ὑπερκόσμιος, supermundanus.

[60] "Զկենդանատու եւ զփրկագործ" = τὸ ἅγιον καὶ ἁγιάζον αἷμα.

*Ու քահանայն բաշխէ՝ որոց ընդ նմա։ Ու յետ այսորիկ մինչդեռ բաշխէ, խոնաւ շրթունքն զմատն աջոյ ձեռինն շփէ անտի. եւ կնքէ զզգայարանսն՝ որ ի գլուխն, եւ զսիրտն*[61]*։*

փոխարէն մէջ առնելով այն մասերն որ ընդօրինակութեան մէջ մատիտով աւրուած էին իբրեւ տարակուսական. «...Լրումն Հոգւոյն սրբոյ։ Տէր Աստուած անսկիզբն եւ անճառելի, մեծ եւ հզօր, գթած եւ ողորմած, մարդասէր, բարերար, անոխակալ, անյիշաչար, բարեգութ եւ բարերար, (բարեխօսութեամբ սուրբ եւ անարատ ծնողի քո եւ աղաչանօք ամենայն սրբոց, եւ) վասն մեծի եւ ահաւոր խորհրդոյս որ առաջի քո. դու գթա ի հոգի հանգուցելոց յորոց անուն զպատարագս մատուցանեմք, հանգո եւ դասաւորեալ պայծառացոյ ընդ սուրբս քո յարքայութեանդ երկնից. (եւ ինձ ծնողացն ողորմեսցիս եւ դասակից արասցես սրբոց քոց յարքայութեանն քում.) եւ զամենայն հաւատացեալքս քո փրկեա եւ զերծո ի սատանայական որոգայթից. տուր միշտ ճանաչել զքեզ եւ առնել զկամս քո եւ երկնչել եւ գոհալ յամենասուրբ յանուանէ քումմէ. եւ զեկեղեցի քո հաստատուն եւ անշարժ պահեա մինչեւ ի միւսանգամ գալուստ քո. եւ որք յանձնեցին մեզ զխնդրուածս աղօթիւք՝ կատարեա զկամս հայցմանց նոցա ի բարիս ըստ կամաց քոց. եւ ամենեցուն որ չարիս խորհին եւ խօսին եւ կատարեն ի վերայ մեր՝ թողութիւն արասցես նոցա եւ բարի հատուսցես վասն հեղման արեան քո. եւ որք բարիս ջանան առնել ծառայքս քո՝ դու փոխարէն հատուսցես ըստ մեծի եւ առատ ողորմութեանդ քո։ Եւ ես, բարեգութ Տէր իմ, բազում մեղօք լցեալ ի մանկութենէ իմմէ կամ առաջի քո, համարձակիմ մերձենալ յահաւոր խորհուրդս քո. մի ինձ ի դատապարտութիւնն համարեսցիս զսա, այլ ի սրբութիւն եւ ի քաւութիւն մեղաց իմոց. սովաւ շնորհեա ինձ Տէր հասանել անճառ պարգեւաց քոց, (զոր խոստացար թէ որ ուտէ եւ ըմպէ զմարմին եւ զարիւն իմ՝ նա յիս բնակեսցէ եւ ես ի նմա.) եւ ի ձեռն նորին խնդրեմք ի քէն Տէր, զի զխորհուրդս եւ զզգայարանս սուրբ եւ ազատ արասցես յամենայն չարէ. (եւ ես զիմ հոգւոյս փրկութիւնն եւ զքո կամք ոչ գիտեմ. այլ որ քո կամք են եւ իմ հոգւոյս փրկութիւնն՝ զայն պարգեւեա ինձ յամենայն ժամ. եւ ես անարժանս չեմ բաւական զքեզ օրհնել եւ փառաւորել, եւ ո՛չ ամենայն արարածք երկնաւորք եւ երկրաւորք ըստ քում արժանեաց չեն բաւական. այլ որպէս վայելէն քում մեծութեանդ քեզ փառք եւ գոհութիւնն յամենայնի, որ անուանեցեր զմեզ անուանակցութեամբ Միածնի քո եւ լուսաւորեցեր մկրտութեամբ սուրբ աւազանին, արժանի արա ընդունել զսուրբ խորհուրդս քո մեզ ի մեղաց թողութիւնն։) Հաւատով ճաշակեմ զկենդանատու եւ զփրկագործ մարմինն Քրիստոսի ի թողութիւն մեղաց իմոց։ Ն– է Բ–ժ–ն Փրջեցեալ. Հաւատով ճաշակել զսուրբ եւ զմաքրիչ արիւն Քրիստոսի ի թողութիւնն մեղաց իմոց։ Եւ քահանայն բաշխէ որոց ընդ նմա» եւն. (տես վերը։)

[61] «Եւ կնքէ զզգայարանսն։» — Այս հին խրատը կամ հրահանգը՝ որ հոս միայն կայ ճանչցուած բոլոր հին պատարագներուն մէջ, երկու մաս ունի։ Այս ինքն քահանայն «բաշխէ որոց ընդ նմա», իրեն հետ եղողներուն բաժնէ, որոնք ինչպէս կ'երեւայ, գոնէ բեմին վրայ իրեն հետ պաշտօնակից են. խօսքերը գոնէ չեն հարկադրեր որ մէկտեղ պատարագող քահանայք ըլլան առ իրեն հետ եղողները։ Երկրորդ մասը բոլոր արեւելք հին ատեն տարածուած սովորութիւն մը կը ցուցնէ. արդէն ի Կղեմայ Աղեքսանդրացւոյ յիշատակուած (Գիրք Ա. գլ. 10) զոր որ գրեթէ մեր հրահանգին բառերովը Ս. Կիւրեղ Երուսաղեմացի ալ (Կոչմ. Ընծայ. խորհրդոց Ե. գլ. 22.) նոր մկրտելոց կը սորվեցընէ՝ երբ որ կ'ըսէ. Accede ad sanguinis poculum, non extendens manus, sed pronus, et adorationis ac venerationis in modum, dicens: Amen. Sanctificeris ex sanguine Christi quoque sumens. Et tum adhuc labiis tuis adhaeret ex eo mador, manibus attingens, et oculos et frontem et reliquos sensus sanctifica. Տես եւ Ս. Կիւրղի Աղեքսանդրացւոյ (Մեկն. Եկեղ. Գիրք Բ.) խօսքը. ἔτι δὲ τῆς νοτίδος ἐναύσης τοῖς χείλεσί σου, χερσὶν ἐπαφώμενος καὶ ὀφθαλμοὺς καὶ μέτωπον καὶ τὰ λειπὰ ἁγιάζει αἰσθητήρια.

*Սարկաւագն.* Եւ եւս հաւատով:

*Քահանայն.* Գոհանամք զքէն, Տէր Աստուած, Հայր Տեառն մերոյ 275
Յիսուսի Քրիստոսի, որ արժանի արարեր զմեզ երկնային պարգեւացս այսոցիկ, հաղորդութեան մարմնոյ եւ արեան Միածնի քո Տեառն մերոյ եւ

‖275 "Քահանայն„ չունի L. ‖278 L "Փրկչիդ:„ ‖279 L ի դատապարտութիւնն:

Մեր յաջորդ պատարագներուն մէջ Թէեւ աս խրատը, ինչպէս հոս Երկրորդ պատարագին մէջ, ներգործութեամբ դրուած չըլլայ, սակայն յայտնի է որ գործադրութիւնը կ'իմացուի. ինչպէս (վեցերորդ) պատարագի մը Հատակատարոց մէջ Հաղորդութենէն եաքը աղօթք մը, զոր որ այսօր մեր սովորական Հատարակ պատարագին մէջ Հաղորդութենէն առաջ սաած ենք, կ'ըսէ "Մի մերժեսցի, Տէր իմ եւ Աստուած, խորտակիչն՝ [illegible] անձին իմոյ պատուական [illegible]„ Շատ յաճախ կը յիշէ կամ կ'ակնարկէ Աստուածաբանն իր այլեւայլ ճառերուն մէջ ան սովորութիւնը, զոր օրինակ Ճառ ԽԵ. գլ. 15. Hinc agnus mactatur, atque actio et contemplatio seu habitus et actus, pretioso sanguine signantur; nam hi ostiorum nostrorum postes sunt, hoc est mentis agitationum ... tum a nobis illorum (Aegyptiorum) exterminator secedet, unctionis metu et reverentia ... որոնք վերոյիշեալ աղօթքին շարունակութիւնը կը յիշեցնեն՝ "զպատերազմողն իմ դարձս յետս պատկառեալ եւ ամաչեցեալ... ամբացս զգնացս մնաց եւ լեզուի իմոյ„ եւն: Ճառ Ա. ի Զատիկ. գլ. 3. Heri agnus mactabatur, et postes ungebantur, luxitque primogenita Aegyptus, ac nos exterminator praeteriit; signaculum quippe terrori ipsi ac venerationi fuit, pretiosoque sanguine protecti sumus. Ճառ ԺԶ. գլ. 11. Quam (plagam) ut effugiamus, et exterminatorem a nobis avertamus, animi postes, contemplationem et actionem, magno illo et salutari signaculo, nimirum novi testamenti sanguine, unxisse satius fuerit.

Տարակոյս չի կրնար ըլլալ որ մեր հրահանգին զրուցածը Հայաստան ալ կ'ըլլար՝ աս պատարագներուն Թարգմանութենէն յառաջ ալ, եաքն ալ: Չենք կրնար ամենեւին կարծել կամ կասկածիլ իսկ՝ որ աս վերոյիշեալ հրահանգութիւնը պարզապէս իբրեւ նիւթական Թարգմանութիւն մը եղած ըլլայ, հապա նաեւ Հայոց գործնական եւ ջերմեռանդ ժողովրդեան իսկ հանդիսական. վասն զի բառ առ բառ սա Ղազարու խօսքին մէջ նոյնը կը կարդանք, (Փարպ. էջ 105) ուր Յազկերտի հալածանաց առեն բոլոր բազմութիւն արանց եւ կանանց սուրբ Խորհրդոյ հաղորդելով եւ ուխտելով՝ առանկ կ'աղօթեն. "Դիր զնշանն զգծած խաչի քո ի մտին աջոյ ձեռին մերոյ, որով կնքեալ զբոլոր անդամս մեր, սարսեալ բանսարկուն՝ փախիցէ ի մէնջ. եւ որպէս հեղեր դու զարիւնդ քո սուրբ ի վերայ մեղաւորաց, պարգեւեա եւ մեզ հեղուլ զարիւնս մեր ի վերայ խոստովանութեանս այսորիկ, եւ իւրաքանչիւր Թողութեան մեղաց:„ Ոչ պարզապէս խաչակնքելու վրայ է խօսքը, հապա սուրբ արեան միջնորդութեամբ կ'ուխտեն արիւննին Թափել: Հետեւեալն որ եւ իցէ տարակոյս աս նկատմամբ կը փարատէ: "Քրիստոս չարչարեալ„ անուամբ Գրիգորի Աստուածաբանի անունը կը կրէ բանաստեղծութիւն մը՝ որն որ անոր գործոց մէջ կը տպագրուի. աս գործքին մէջ հարիւրապետին համար՝ որ խաչելութեան առեն հաւատաց, կ'ըսուի. "Աղբիւրէն (յարենէ կողին) ձեռքով առած՝ օծեց աչքերը, ինչպէս որ ի դէպ էր, անկէ իրեն մաքրութիւն փնտռելով:„ Բայց սոյն գիրքն իրաւամբք ի գիտնոց չի համարուիր Աստուածաբանին, գլխաւորաբար պակսելով հոն ան վարդապետութեան մաքրութիւնը՝ որն որ այնչափ յատուկ է Սուրբ Վարդապետին:

Աւագ շաբթուն մէջ ապաշխարողաց վրայ կարդացուած աղօթքը, որուն ճշմարիտ հեղինակը, ինչպէս մենք ալ այժմ կ'ենթադրենք, Յովհան Մանդակունին է, նոյն սովորութիւնն ակնարկող խօսքեր կը պարունակէ վերջերը. "Տուր մեզ, Տէր Աստուած մեր, զքո ուրախարար եւ զմարդասիրական համբոյրդ, տալով զկնիք օրհնութեան ի հոգիս մեր. եւ զնշանն արդարութեան տպաւորեա յաջոյ ձեռին մերում. միշտ ունելով մեզ զնշան եւ զգրոշմ ուխտին որդեգրութեան, զոր ուխտեցաք միջնորդութեամբ մարմնոյ եւ արեան Որդւոյ քո սիրելւոյ.„ (Ա. Հատ. Ժամագ. տպ. Վիեն. էջ 316): Շատ զօրեղ դաշնադրութեան կերպ մը: Քիչ մը մութ, բայց շատ գեղեցիկ եւ յափշտակիչ բացատրութիւն մըն է: Մեղաւորն ապաշխարութեամբ մաքրուած՝ ընդունուելով ի մարդատէր Հօրէ համբուրիւ "յաջս եւ ի բերան„ (Մանդ., Վասն ապաշխ. տպ. Վենետ. 1836, էջ 17). ալ արդարացած՝ որդւոց Աստուծոյ ազնուականութեան դարձած ըլլալուն՝ հօրմէն վաւերական կ'ընդունի իր աջ ձեռին մատը, որպէս զի անով սուրբ դաշինքի մը կնիքը կամ դրոշմը կոխէ՝ Թէ ոչ եւս պիտ'որ քակէ երԹայ

*մեզ շնորհելով․ որպէս զի պահելով զպատուիրանս քո ի կեանս յայսմիկ եւ ի յերկրորդ գալստեանդ քո փառաւք Հաւր եւ ամենայն հրեշտակաւք յափշտակեսցուք ամպովք ընդ առաջ քո յաւդս ընդ ամենայն սուրբս քո․ կացցուք ընդ աջմէ քումմէ, եւ ժառանգեսցուք զսկզբանէ աշխարհի պատրաստեալ արքայութիւնդ սրբոց քոց, եւ գոհութեամբ փառաւորեսցուք զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգիդ այժմ եւ միշտ եւ յաւ․։*

*Քահանայն կնքէ զժողովուրդն։ Կատարումն աւրհնաց․ եւ արձակին խաղաղութեամբ։*

---

*իշխ․։„ Ցետոյ՝ “Դրդ․ Առաջի քո։„ ‖295 L ամպօք։ ‖296 L զսկզբանէ աշխարհի եւն։ ‖298 Աղօթքիս ծայրը կը կցէ L. “Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմ հետ[է] մինչեւ յաւիտ․։„ ‖299—300 Աղօթքս այսպէս ունի հոս L. “Կատարումն օրինաց եւ մարգարէից, դու ես Քրիստոս Աստուած մեր, որ լցուցեր զՑեառն (=յօդէս) հայրական տնօրէնութիւնդ քո, եւ լցո զմեզ Հոգւովդ քո սրբով։„*

*կեղեցական հաղորդութեան նշանակ։ Տես վերն էջ 235։ Հիմնակ ինչպէս ծանօթ է, եպիսկոպոսի եւ քահանայից ձեռնադրութեան ատեն մատուցուած պատարագին պահուած է ի միասին պատարագել՝ թէ լատին եւ թէ հայ ծիսից մէջ։*

## Բ.

## ԵՐՐՈՐԴ ՊԱՏԱՐԱԳ

---

### ԱԶԴՈՒՄՆ

1. *Ս. Գրիգորի աս պատարագը մասնաւորութիւն մ'ունի, այս ինքն* 373—374 *տարւոյն կը վերաբերի անոր գրութիւնը, երբ բոյսերը եւ տունկերը կարկուտ մ'ապականեց։ Տես Զ. հատուածը՝ ուր կ'աղօթուի ի մասնաւորի "Քաղցրացո..", եւ իր հօրը քիչ մ'առեն դեռ կենդանութիւն ունենալը կը յիշուի՝ որն որ լռած էր ան միջոցին, եւ որուն կ'աղօթէ իրեն համար Զ. աղօթքին մէջ "Աստուածային բարերարութեամբ քով յիշեա, Տէր, զվերակացու եւ զտեսուչ հոգւոց մերոց զհայրապետն մեր... եւ ղառաջիկայ ժամանակն կենդանութեան իւրոյ։" Եւ առանձինն ղինքն կը յիշէ "զտաժանեալս մեղօք։"*

2. *Մասնաւոր Ողջունի աղօթքէ մը ետքը Սրբասացութեան աղօթք մ'ընելով Երրորդութեան՝ կ'ընէ աղօթք մը Որդւոյն հանգուցանելով ի Նուիրագործութիւն "Առէք կերայք" եւ "Առէք արբէք" խօսքերով, աստուածային տեսակաւ կատարեալ ըլլալը հաստատուն ցուցընելով՝ նովին ի գերեզմանի լռուլ ցուցընելով կրկին բնութիւնը, նախագոյակ բնութեամբ կ'ենթադրէ անբաժին, եւ խոստովանութիւնը կ'ընէ երեք անձանց միութեամբ եւ Երրորդութեամբ դաւանելով։*

3. *Զմշտնջենաւորութիւն Խորհրդոյն յայտնեց՝ սահմանելով Բանն աստուածային եւ անսահման թէ "Այդ է մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։"*

4. *Թէ ի պտղաբերութիւն միայն է Դաստիարակ գալ Հոգւոյ յետոյ ըստ իջմանն ի վերնատունն ի ցուցանել մարմին եւ արիւն Ճշմարտապէս։*

5. *Գլխաւոր մասն յիշելքին կ'երթայ ան թղթին՝ որն որ Լուգդունեան Օրինակին մէջ ինկած է մինչեւ ցբառն "օգնական անօգնականից։"*

6. *Լուգդունեան Օրինակը Աթանասի եւ Ոսկեբերանի աղօթքներ կ'աւելցընէ, թէպէտ եւ անթերի է մեր պատարագին աղօթքը։*

---

քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց. — ի ձայն. — շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հաւր միանգամայն եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ յաւիտեանս։

ՈՂՋՈՅՆ

Սարկաւագն. Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան[5]. [եւ որք ոչ էք կարող հաղորդել աստուածային խորհրդոյս, առ դրունս ելէք եւ աղաւթեցէք։

Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք, բարւոք կացցուք. եւ նայեցարուք զգուշութեամբ։

Դպիրքն. Առ քեզ, Աստուած։

Սարկաւագն. Պատարագ Քրիստոս մատչի գառն Աստուծոյ։]

Քահանայն. Շնորհք, սէր եւ աստուածային սրբարար զաւրութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսին[6]։

Դպիրքն. Ամէն. եւ ընդ հոգւոյդ քում։

[Սարկաւագն բարձր. Զդրունս, զդրունս ամենայն իմաստութեամբ եւ զգուշութեամբ[7]։] Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր աստուածային երկիւղիւ։

Դպիրքն. Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ։

Սարկաւագն. Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ։

Դպիրքն. Արժան եւ իրաւ։

---

24—5։ ‖[15] L հաղորդէլ։ ‖[17] L "երկեղիւ ... բարեոք„ եւն։ "Երկեղիւ„ նաեւ ի տողն 25։ ‖[28] L չունի "Դպիրքն„։

nis rationis particeps (*πᾶσα λογικὴ φύσις*) appotit. Վերջին բայը մեր աղօթքին "փափաքիմք„ը կը յիշեցընէ։ Ճառ ԺԶ. գլ. 20. կարկառ մեծ հարուածին վրայ՝ լուռ կեցող հօրը կ'աղաչէ Գրիգոր որ զԱստուած հաշտեցընէ *δι' εὐχῆς καὶ λογικῆς ἐντεύξεως*: Մաւրինեան հրատարակիչը կ'ըսէ ի ծան. Sic passim Gregorius mutat, quod Paulus XII. 1, vocat *λογικῆς λατρείας*, videtur esse oratio, qnae fit verbo ac mente, deprecatio, intercessio. Հայ թարգմանիչը "խնդիր„ ըսեր է։ — Իսկ "սիրողութիւն„ կամ "սիրողութիւն սրտի„ թարգմանուածը, եթէ չենք սխալիր, նոյն իսկ Գրիգորի աս նիւթիս վրայ խօսած ատեն գործածած *φίλτρον* բառին թարգմանութիւնն է։ Զ. Ճառին մէջ գլ. 5. ամէն բանէ վեր՝ յետ Աստուծոյ, զբանն (զխօսս) եւ զբանաւորութիւն յարգելն ըսելէն ետքը, կը յաւելու. *Εἰς τοῦτό μοι πᾶν ἐκενώθη τὸ φίλτρον μετὰ Θεόν* — in eum (sermonem) omnis meus amor, post Deum, effusus est.

Ուստի դատելով հայ բնագրին՝ որուն հաս աս կտորը "յորում փափաքիմք յարգմանց էիցդ ճաշակել„ ինչպէս Լուգդունեան մատենին մէջ կայ, գուցէ կրնայինք գիր մը միայն թող տալով՝ բժշկել զանիկայ, այս ինքն "էիցդ„ գրուածը կարդալ "էիդ։„ Գրիգոր *ὃ ὢν* (= "որ էն„) կը գործածէ յաճախ։

[5] "Ողջոյն տուք.„ Տես վերը՝ էջ 124։

[6] "Շնորհք, սէր...։„ Մեր հասարակ պատարագին մէջ եղած սովորական ձեւով. բայց, ինչպէս վստահ ենք, անկէ առնուած չէ, հապա հան ալ հոս ալ նոյն աղբերէ յառաջ եկած փոփոխութիւն է։

[7] "Զդրունս, զդրունս։„ — Հաւաքիչը ուրիշ հնագոյն պատարագներէ հոս բերած է անշուշտ։

[8] "Արփիական.„ — անստարակոյս *ὑπερκόσμιος*, զորն որ Երրորդութեան վրայ կը տարադէ Ս. Գրիգոր։

սուրբ, յաստուածային, յանարատ ի ձեռաց՝ աւրհնեցեր, սրբեցեր, գոհացար, բեկեր. ետուր առ ի քէն ընտրեալ եւ բազմեալ աշակերտացն ասելով՝ — ի ձայն.

ՆՈՒԻՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Առէք կերայք ի սմանէ ամենեքեան. այս է մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։

Ցած. Ըստ նմին եւ զբաժակն առեր ի սուրբ, յաստուածային, յանարատ ի ձեռաց՝ աւրհնեցեր, սրբեցեր, ետուր առ ի քէն ընտրեալ եւ բազմեալ աշակերտացն ասելով. — ի ձայն. — Առէք արբէք ի դմանէ. այդ է արիւն իմ նորոյ ուխտի, որ յաղագս ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։

Գ.[15]. — Եւ աստուածային տեսակաւդ՝[16] յորում բնակէ ամենայն լրումն աստուածութեանն մարմնապէս, պատարագեցար ի վերայ խաչին, ոչ ի կողմն որիշ ուրեք ինչ մնացեալ կարծիս բաշխիս ի լրումն ամենայնի, եւ ոչ սուղամանեայ ինչ ունելով նիաղ իրս[17], այլ լի եւ աստուածացեալ[18] մարմին

---

Դ. ‖75 L բուն "ի կողմն։" ‖77 L "նիաղերս։" ‖78 L "եդար ի գերեզմանի է Քրիստոս զօրութիւն Աստուծոյ" եւն։ ‖79—80 L "այլ օնաֆանցէք ընդդանուրս անհիաղ մնացեալ ի քում մնախառ անկղէնութենէ" եւն։ ‖87 L "քո Հօր։"

[15] Աս հատուածը կերպ մ'ընդլայնում է Աղ. Բ. 9 խօսքին՝ ուն որ Կղեմէսի պատարագէն սկսեալ՝ տեսանք Բարսղի եւ Երկրորդ պատարագին մէջ։ Դժուարաւ մարդ կրնայ ուրաչել թէ զայս մեր պատարագը տեսած չըլլայ Դաւիթ փիլիսոփայ է գործուն մէջ՝ երբ որ կը կարդայ (Ներբ. ի Խաչն, էջ 107) աս տողերը. "Մշտնջենական եւ ոչ առժամեայն զենումն զ'ի սմա զենեալն հաւատայ եկեղեցի. Նոյն խորհուրդ զենման միշտ հանապազորդեալ մինչ ի միւսանգամ նորայն յայտնութիւն՝ ի Տեառնէ իսկ հրամանաւորեցաւ։"

[16] "Աստուածային տեսակաւդ." պիտ'որ ըլլայ μορφή (— forma, դէմ, —) դարձեալ վերյիշեալ մոլորութեան դէմ յայտնի ընելու համար թէ ոչ առանց աստուածութեան, առանց "աստուածային տեսակին," մինակ մարմինն իբրեւ լոկ մարդ, իբրեւ թէ դեռ ոչ աստուածացած՝ խաչեցաւ կամ պատարագեցաւ։ Տես Թղթ. առ Կղեդոնիոս։

[17] "Եւ ոչ սուղամանեայ ինչ ունելով նիաղ իրս"։ — Լուգդ. ձեռագրին մէջ գիր առ գիր սանկ գրուած է. "ոչ ի կողմն որիշ ուրեք ինչ մնացեալ կարծիս բաշխիս ի լրումն ամենայնի, եւ ոչ սուղամանեայ ինչ ունելով նիաղ իրս, այլ...": Այս խանգարում. սակայն ոչ այնչափ բառեր՝ որչափ առանձին գրեր միայն ուղղելու պէտք ունինք, բարեբախտութեամբ հոս ալ Սրբոյ Հօր վերջին (ԽԵ) ճառէն շատ աղէկ առաջնորդուելով։ Հոն (գլ. 13.) կ'ըսէ. τὸ μέγα καὶ ἄθυτον ἱερεῖον, ἵν' οὕτως εἴπω, ὅσον ἐπὶ τῇ πρώτῃ φύσει, ταῖς νομικαῖς θυσίαις ἐγκαταμέμικται, καὶ οὐ μικροῦ μέρους τῆς οἰκουμένης, οὐδὲ πρὸς ὀλίγον, ἀλλὰ παντὸς τοῦ κόσμου καὶ διαιωνίζον καθάρσιον — Magna illa, et, quantum ad primam naturam, immactabilis, ut ita loquar, victima, legalibus sacrificiis immixta est; illa, inquam, non exiguae cujusdam partis orbis terrarum, nec ad exiguum tempus, sed totius mundi nunquam intermoritura expiatio. Ըստ այսմ "ի կողմն," կ'ուղղուի "ի կողմանն" — "բաշխիս," կ'ըլլայ "աշխարհիս" — "ի լրումն," կ'ընենք "լրումն," (կոչական) — "սուղամանեայ," կ'ըլլայ "սուղժամանակեայ" = πρὸς ὀλίγον, ad exiguum tempusին համեմատ. — "նիաղ իրս" կը թողունք այնպէս՝ զոր որ կ'երեւայ թէ պէտք էր ընել "նիաղիս" (= պակասիս, նուազիս)։ Սակայն թէպէտ նախնաբար այսպէս մաքրած ըլլանք վերջին մասին, (այս ինքն "սուղամանեայ" եւ "նիաղ իրս" ձայներուն նկատմամբ) ուզելով չթողուլ վերյիշեալ Գրիգորի խօսքին թելը, բայց եւսքէ մտադրութեամբ կը տեսնենք որ հիմ մը չկայ առ մասին Լուգդ. Օրինակին ընթերցուածին վրայ եւ ոչ կասկածելու իսկ. վասն զի մնալով ալ

*մշտնջենաւոր[19] եղար ի գերեզմանի Քրիստոս զաւրութիւն Աստուծոյ[20] եւ իմաստութիւն, ոչ տեսեր զապականութիւն. այլ սթափանցիկ ընդ հանուրս աններաղ մնացեալ ի քումդ նախագոյակդ էութեանդ[21] որ ի մեռեալս ազատ առանց աւգնականի, աւերեցեր զդժոխս. խորտակեցեր զզաւրութիւն մահու՝ յարուցեալ ի մեռելոց ճշմարիտ Աստուած ծանուցար կենդանեաց եւ մեռելոց։[22]*

*Եւ արդ մեք, Տէր, զառ ի քէն պարգեւեալ մեզ զընծայս պատարագեմք ի վերայ աստուածընկալ սեղանոյս. յիշեմք զսուրբ չարչարանսն՝ որ ի վերայ խաչին յաղագս մեր, զթաղումն երեքաւրեայ, զյառնելդ ի մեռելոց, զհամբարձումնդ յերկինս, զնստելդ ընդ աջմէ քոյ Հաւր. — ի ձայն. — զահաւոր եւ զփառաւորեալ եւ զմիւսանգամ զալուստդ խոստովանիմք եւ աւրհնեմք։*

*Ժողովուրդն. Յամենայնի։*

*Ե. — Քահանայն. Զքեզ աւրհնեմք եւ փառաւորեմք եւ հաւատով երկիր պագանեմք, որ երիւք ըստ անձնաւորութեան[23] ինքնագոյ էակդ ես. վասն զի բաշխիս անբաժանաբար եւ միաւորիս որոշմամբ[24], ոչ զմիութիւնդ խառնակութիւն գործելով եւ ոչ զբաժանումնդ աւտարութիւն[25] համարելով. այլ երեքանձնեայ անճառ միութեանդ սրբոյ Երրորդութեան մատուցանեմք զաւրհնութիւն եւ զփառս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Աստուծոյ։*

---

նոյնպէս “ուղղափառնեայ„ եւ “նիւթ խորս„, ամբողջ կու տան ան հարկաւոր իմաստը՝ զոր որ կը պահանջէ յաջորդ պարբերութիւնը. այսինքն թէ “եւ ոչ ալ փոքու իւիք մասամբ նուազութիւն մ'ունենալով (այս ինքն՝ մարմինդ մահուընէ ետքը մէկդի թող չտալով), հապա լիուլի, աստուածացեալ (աստուածութենէն չբաժնուած) մարմինդ մշտնջենաւոր՝ գրուեցար գերեզմանի մէջ։„

18 “Աստուածացեալ.„ — շատ սովորական մեր Ս. Հօր. անանկ որ “մարդացեալ, ներմարդութիւն,„ շատ քիչ տեղ՝ “մարմնաւորութիւն„ ըսելու տեղ՝ սիրով կ'ըսէ θέωσις.

19 “Մշտնջենաւոր„ — Նախընթաց վերջընթեր Ծանօթութեան մէջ յառաջ բերուածը՝ կու տայ առոր յունարէնը διαιωνίζον = “մշտնջենաւորող,„ չէ թէ՝ ինչպէս մոլորութիւնը կ'ըսէր՝ փրկութեան գործը լմնցընելէն ետքը մէկդի դրուած։

20 “Ի Քրիստոս Աստուծոյ զօրութիւն.„ — Լուգդ. մատենին կը վերցընենք է նախդիրը, եւ կը դնենք “Քրիստոս։„

Քիչ մը անդին “-թափանցիկ„ կը գրէ նոյն մատեանը. մենք՝ “ըստ թափանցիկ։„

21 “Նախագոյակ էութիւն„ ի Քրիստոս, ասկէ չորս Ծանօթութիւն առաջ յունարէն յառաջ բերուած πρώτη φύσις ըսուածն է, այս ինքն Քրիստոսի Տեառն մերոյ աստուածային բնութիւնը, զոր որ թարգմանիչը սիրական ձեւովը շրջած է։ Ս. Գրիգոր՝ Տեառն մերոյ չէ թէ միայն բնութիւնները երկու կը համրէ, հապա նաեւ առաջին եւ երկրորդ կը դասէ, նոյնպէս հայ թարգմանիչն ալ, ով որ է նէ՝ որը նախ գտնուած եւ որը յետոյ եղած՝ կ'որոշէ։

22 Հռոմ. ԺԴ. 9։

23 “Անձնաւորութիւն.„ տես քիչ մը վարը՝ Դ. Պարգ. ծան. 6։ Յունարէնը Ճառ ԼԹ. գլ. 11. τρισὶ μὲν κατὰ τὰς (ἰδιότητας ἤγουν) ὑποστάσεις, մեր պատարագին բնագրին մէջ միայն ὑποστάσεις կայ եղեր, չէ թէ փակագծի մէջ առնուածն ալ. վասն զի “անձնաւորութիւն„ միայն առ վերջին յոյն բառին կը վերաբերի։

24 “Միաւորիս որոշմամբ.„ — Նոյն Ճառին մէջ քիչ մը յառաջ կայ՝ διαιρεῖται γὰρ ἀδιαιρέτως καὶ συνάπτεται διῃρημένως. (Ճառ ԻԸ. գլ. 1. ἑνικῶς διαιρουμένη (ἔλλαμψις), καὶ συναπτομένη διαιρέτως.) — Հայկազն. Բառգրքին մէջ՝ “բաժանի անբաժանաբար.„ Աստուածաբ. Յայտն. “Առ Ս. Երր. բաժանել՝ անբաժանապէս եւ միաւորել որոշմամբ.„ Խոսրովիկ։

25 “Օտարութիւն.„ — Նախընթացէն քիչ մը ետքը ըսուածը οὔτε τὴν ἕνωσιν, σύγχυσιν ἐργαζόμενοι, οὔτε τὴν διαίρεσιν, ἀλλοτρίωσιν = օտարութիւն, նոյն էութենէ չըլլալ։

26 Ս. Գրիգոր այսպէս կը խօսի գդյափախեալ տեսակներուն վրայ. “աստուածացեալ

Հանապազ փառաբանութեամբ մատուցանեմք զպատարագս զայս եւ խոստովանիմք զսա աստուածացեալ մարմին եւ արիւն[26] քեզ, Որդի Աստուծոյ, յաղագս աստուածային եւ անվախճան բանիդ[27] քո ասելով՝ Առէք կերայք ի դմանէ ամենեքեան. այդ է մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի եւ ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ — *Անքէ զհացն եւ զգինին՝ ասելով.* — Աղաչեմք զքեզ, Տէր, որպէս զի եղիցի սա յիշատակ քեզ եւ յիշատակ Նորոգ մերոյ։ [Եւ արա զհացս զայս † պատուական մարմին Քրիստոսի քո։ Եւ զգինիս զայս † պատուական արիւն Քրիստոսի քո[28]։]

## ԿՈՉՈՒՄՆ

[Քեզ երկիր պագանեմք, եւ ի քէն հայցեմք, անբաւ բարեգութդ Աստուած, առաքեա ի դաստիարակեղէն իջեցդ, վերնական շնորհիւ զնորոգող եւ զմարդասէր Հոգիդ սուրբ ի մեզ † եւ ի պատարագս յայս †, զոր եդեալ այժմ առաջի, որպէս զի արասցես զհացս զայս մարմին պատուական, եւ զգինիս զայս արիւն պատուական[29] Տեառնդ մերոյ եւ փրկչիդ Յիսուսի Քրիստոսի։] — *Երկրպագէ երիցս, եւ համբուրէ զսեղանն, եւ ասէ զաղաւթս:* —

Քեզ ամենայն արարածք երկնաւորք եւ երկրաւորք բնութիւնք երկիր պագանեն, մարդասէր Տէր՝ Հոգի սուրբ, ընդ որս եւ մեք խոնարհեցուցեալ զպարանոցս՝ խնդրեմք յառատ սիրոյ քո, առաքեա զնորոգիչ Հոգիդ սուրբ եւ ճշմարիտ, սրբել եւ մաքրել զմեզ յամենայն աղտից. եւ պարգեւեա մեզ՝ լիապէս եւ աներկիւղ եւ անպատապարտ մերձենալ ի կենդանարար եւ յանապական մարմին եւ յարիւն Որդւոյն Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

---

Ե. ‖105—118 Հոս դրուած կոչման աղօթքներն են այն երկու կտորն, զոր L վերն ունէր անկապ կերպով. (տես լիովին Ծան. ի տողն 51։)

մարմին եւ արիւն,„ այս ինքն՝ անքակութեամբ միաւորեալ ընդ աստուածութեան Բանին։ Ս. Գրիգորի գործածած եզրներուն նայելով՝ նաեւ փոխարկ--ելու կը նշանակէ θέωσις, deificatio ձայնը. տես Ճառ ԻԵ. գլ. 2. Adesdum, ad sacra haec (dona), et mensam hanc mysticam, atque ad me, qui per haec sacrum deificationis munus obeo (διὰ τούτων μυσταγωγοῦντος τὴν θέωσιν).

27 "Յաղագս աստուածային եւ անվախճան բանիդ քո.„ — տես աս նշանաւոր տան վրայ յետոյ։

28 Թէ՛ օտար եւ թէ՛ անմիտ եւ շատ ազնիւ յաւելուածը՝ որն որ քերթականօրէն ալ նախընթացին չի յարիր, կը թողունք՝ "Եւ արա զհացս պատուական մարմին (Քրիստոսի) քո, եւ զգինիս պատուական արիւն (Քրիստոսի) քո։„ Ուստի Քրիստոսի կ'աղօթուի որ զհաց եւ զգինի՝ իրեն (Քրիստոսի) մարմինն եւ արիւնն ընէ (!)

29 Այսպէս ի Հաւաքումն, Հատ. Բ. "եւ զգինիս զայս՝ արիւն ...։„

30 Այն հատուածը "Ճանապարհորդաց,„ ինչպէս նաեւ հետեւեալը ամբողջ օրոց եւ բուսոց վերաբերեալ, մանաւանդ այնպէս անմիջապէս. Ցեղեկաց ոճիերները, կը ցուցնէ տարբական մեծ արկածի մը ազաւաղութեան տակ ասոնց վրայ դրուած ըլլալը. աս արկածն ալ ծանօթ է Գրիգորի ամբողջ ԺԶ. Ճառէն, (գլ. 5.) որուն վերնագիրն է "Ի հայր իւր լռեալ եւ ի

## Ց Ի Շ Ա Տ Ա Կ Ք

Օ. Սովաւ շնորհեա զաւրութիւն թագաւորաց եւ իշխանաց մերոց, եւ ամենայն ճանապարհորդաց[30]՝ որք ի ծովու եւ ի ցամաքի (ինաւահանգիստն[31]) խաղաղութեան։ Սովաւ քաղցրացոյ[32] զամենայն զառնաշունչ իրս հողմոց[33], զբռնութիւն[34] կարկտի եւ զեղեմնածին սառ[ն]ամանեաց[35], եւ շնորհեա երկրի մերում զառողջութիւն բուսոց եւ տնկոց։ Սովաւ եղիցի յիշատակ առաջի ահաւոր աստուածութեանդ քո՝ սուրբ հարց, հայրապետաց, առաքելոց, մարգարէից, քարոզչաց, աւետարանչաց, վկայից, մարտիրոսաց, եւ ամենայն աշխարհական կարգի արանց եւ կանանց հաւատով ի քեզ կատարելոց[36]։ — Ի ձայն. — Ընդունել զամենասրբուհին, զանարատն, զառաւել փառաւորեալ տիրուհին մեր զաստուածածինն եւ զմիշտ կոյսն Մարիամ։

[Սարկաւագն յայսմ վայրի զԱռաքելոցն ասէ։]

Սուրբ զերկնային զաւրութիւնսն, սուրբ զմարգարէն Յովհաննէս զառաջընթաց կարապետն եւ զմկրտիչն, սուրբ զամենագովելի առաքեալսն, սուրբ զվկայսն՝ զորոց զյիշատակն կատարեմք այսաւր, եւ զամենայն սուրբս քո յիշե-

---

Զ. ‖120 Ցիշատակաց առջեւ կը կցէ L խրատագիրս՝ "Երկրպագէ երիցս եւ համբուրէ զսեղանն եւ ասէ զաղօթս„ (տես վերը բնագիր՝ տող 110։) ‖121 L ձեռագրին մէջ կայ փակագծեալն "ի նաւահանգիստ„, գոնէ ըստ օրինակին՝ Cod. Arm. Suppl Nr. 50. ‖127 L ի քեզ կատարելոցն։ ‖130 L ունի այս խրատագիրն, որ անշուշտ նախնական չէ։ ‖133 L զորոյ։ ‖146 L ի բարիոք,

կորկուտն՝„ որուն բրած տպականութիւնները հոս կը տորագրուին, որովք ամայի եղած էր Տիբերինա գաւառը, Գրիգորի ծննդեան երկիրը իբր 373ին։ Ոչ ինչ ընդդէմ է որ մասնաւոր նշանակութիւն մ'ունենայ "զօրութիւն թագաւորաց„ (այսինքն կայսերաց՝ զորոնք այսպէս կ'անուանէին Յոյնք,) եւ իշխանաց մերոց։„ — "Թագաւորաց,„ ուստի հարկաւ Թէոդոսի Ա. միապետելէն առաջ։

31 ("Ի նաւահանգիստն„) — առ՝ մեր կողմանէ գրուած բառին պէս բառ մը հարկաւ կը պակսի Լուգդ. մատենին մէջ։ — Սակայն կայ այս արդէն ի L (տես վերը։)

32 "Քաղցրացոյ,„ գուցէ temperare կամ compescere (πτήσσω).

33 "Զամենայն զառնաշունչ իրս հողմոց,„ վերյիշեալ ԺԶ ճառին մէջ գլ. 5. ἀνεμοφθορίαι καὶ χάλαζαι — a ventis invectae labes et grandines. Համա. (ԺԶ, գլ. 4.) Tametsi omnibus de meritae poenae atrocitate aliquid detrahat, atque irae meracum benignitate temperet. (τὸ τῆς ὀργῆς ἄκρατον φιλανθρωπίᾳ κίρνησιν.)

34 "Բռնութիւն„ (կարկտի), violentia, plaga — πληγή.

35 "Զեղեմնածին սառամանեաց։„ — Խաչ օրհնելու կանոններէն մէկուն մէջ որոշ աղօթք մը կայ՝ որն որ վերջին տեղն ունի. ասոր մէջ սա խօսքերով կ'աղօթուի. "Եթէ շարժեսցին ամպք բարկութեան կարկտի կամ հողմոյ խորշակի կամ եղեմնածին սառամանեաց զառնութեան...։„ Աս աղօթքը Ե դարէն առաջ չի կրնար բերուիլ. ուստի ահա մեր առաջինկայ պատարագին այսչափ հին գործածող մը։ Սակայն ըստ մեզ՝ չէ թէ մինակ գործածող, հապա հոն ալ հոս ալ մի եւ նոյն հայերէն գրիչն է՝ որն որ այսպէս ինք զինք կը գուշակէ։ Տես Մաշտոց, տպ. Վենետ. 1831, էջ 625։

36 Հոս մեր Հաւաքիչը ամբողջ հատուած մը Ոսկեբերանի պատարագէն հոս կը զետեղէ նոյն իսկ ան հայերէն թարգմանութեամբ՝ որով կը գտնուի ամբողջ Ոսկեբերանի պատարագը Լուգդունեան եւ Մոնաքոնեան մատենից մէջ։ Աս առթիւ անհետ եղած է "Ընդ որս եւ մեզ...„ որն որ, ինչպէս ցայսվայր տեսանք եւ դեռ պիտ'որ տեսնենք, մեր ամէն պատարագներուն մէջ կը գտնուի։ — Բերուած հատուածը սա է՝ բառ առ բառ նոյն՝ յունականին հետ. "Առաւել զամենասրբուհին... յաւիտենից։ Ամէն։„

լով, աղաչանաւք նոցա այց արա մեզ, Աստուած, եւ յիշեա զամենայն զննջեցեալսն մեր յուսով յարութեան կենացն յաւիտենից: Ամէն:

Աստուածային բարեխաւսութեամբք քո յիշեա, Տէր, զսուրբ կաթուղիկէ առաքելական եկեղեցի՝ զոր փրկեցեր պատուական մարմնով եւ արեամբք քո, եւ լուսաւորեալ պայծառացուցեր ամենայաղթ սուրբ խաչիւք քո, շնորհեա սմա զանշարժ զխաղաղութիւն քո:

Աստուածային բարեխաւսութեամբք քո յիշեա, Տէր, զվերակացու եւ զտեսուչ հոգւոց մերոց զհայրապետն[37] մեր, եւ շնորհեա նմա ճշմարիտ հաւատով եւ ուղղափառ վարդապետութեամբ հովուել զառ ի քեզ հաւատացեալ ժողովուրդս եւ զառաջիկայ ժամանակս կենդանութեան իւրոյ:

Աստուածային բարեխաւսութեամբք քո յիշեա, Տէր, զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս՝ որք ուղիղ համառաւտեն զբանն ճշմարիտ քարոզութեան, եւ շնորհեա նոցա ժամանակ խաղաղութեան ի բարւոք ծերութեան:

Աստուածային բարեխաւսութեամբք քո յիշեա, Տէր, եւ զիս զտաժանեալս մեղաւք[38], յահագին աւուրն համառաւտի, եւ վասն սորոյ պատարագիս՝

---

||150 Լ առատաձեռնեա յիշ: — Այս տողին մէջ կէտերով նշանակուած տեղը մեծ դատարկ մը կայ, ինչպէս արդէն նշանակուած է Լիոնի ձեռագրին Պարիսեան ընդօրինակութեան մէջ (Suppl. Arm. Nr. 50, fol. 81b) թէ "Պակաս գուցէ անդ էր իշխ միոյ ի ձեռագիր:" Հոս դիտել կու տայ Ցարդ. հեղինակն որ "իրօք պակաս է, այսինքն Ը. [illegible] վասն զի այսպէս ընդօրինակողէն նշանակուած են թերթերը, ամէն մէկ թերթը՝ 12 թուղթ: Երեսները բոլորգիր միջակ 21 տող կը պարունակեն 6—7 բառերով:" Ըստ այսմ

[37] "Զհայրապետն մեր." չէ թէ հիմնուած "հայրապետի" կամ "պատրիարքի" նշանակութեամբ. հապա ուրիշ մասնաւոր առմամբ մը՝ որն որ սովորական է Գրիգորի, եւ հոս ուրիշ անհատ անձի մը վրայ, այս ինքն իր համանուն հօրը՝ Նազիանզու պարզ եպիսկոպոսի մը վրայ բռուած: Ինք իսկ Ս. Հայրը, Ճառ ԽԲ. գլ. 23. (վերջին ողջոյն Կ. Պոլսեցւոց) եպիսկոպոսները այսպէս կ'անուանէ, ակնարկելով Վաղէսի ատեն եղած քանի մը ծերունի եպիսկոպոսաց սպանութիւնը՝ կ'ըսէ. Οὐ πρεσβυτέρων ἐπισκόπων, οἰκειότερον δὲ πατριαρχῶν εἰπεῖν, σφαγὰς δημοσίας. Լա. Annon publicas senum episcoporum, aut — ut aptiore verbo utar, — patriarcharum caedes. Այլապէս չէր անուանէր Գրիգոր իր գրեթէ 100ամեայ ծերունի հայրը: Ճառ ԽԳ. գլ. 37. (գովեստ Ս. Բարսղի) կ'ըսէ. Ad eum (Basilium) ungendum viros pietate claros... excitavit (Spiritus S.), et cum iis novum Abrahamum et Patriarcham nostrum, parentem, inquam, meum. Այս եւ նոյն է մեր պատարագին "զհայրապետն մեր" ալ՝ որն որ շատ ժամանակ չի կրնար ունենալ ապրելու. ոչ թէ անոր համար կ'աղօթէ որդին, ինչպէս ուրիշ պատարագներուն մէջ կ'ըլլայ, որ "ընդ երկայն աւուրս" կեայ եւ հովուէ, հապա միայն՝ որ նուազ ան մնացած կենաց (քիչ) ատենն ալ ուղիղ վարդապետութեամբ հովուէ. անոր համար ալ վերյիշեալ "Կարկուռ" Ճառին մէջ՝ որմէ առ մեր պատարագը հազիւ ամիսներով եղբը կրնայ ի գիր առնուած ըլլալ (373, 374ին) առնել կը խօսի ալ տարիներով ծանրաբեռնած հօրը համար. (գլ. 3.) Magnam vitae partem sine reprehensione confecit, et jam communis hujus vitae maris velut in portu est, tutior ac proinde beatior sit, quam is, cui longe adhuc navigatio superest? Եւ քիչ մը եղբր (գլ. 4.) լուռ կեցած հօրը դարձնելով խօսքը՝ Ne nobis, non tam paucos, quam suaves sermones invideas, nec jam impendentis detrimenti praeludium praebeas. Loquere, quaeso, etsi pauca, at mihi chara et dulcissima. Չէր կրնար որդւոյն առ կանխածած օրհասն ուշանալ. 374ին կէտերը սահմանուած էր իր հօրը դամբանականը խօսելու. (Ճառ ԺԸ.):

[38] "Եւ զիս զտաժանեալս մեղօք." զԳրիգոր օգնական հօրը՝ ի կառավարութեան եկեղեցւոյն Նազիանզու:

զոր հաւատով մատուցանեմ առաջի ահաւոր աստուածութեանդ քո, առատաձեռնեա ինձ զբարերարութիւնդ քո, մարդասէր Տէր: . . .[39] անաւգնականից, յոյս յուսացելոց, խռովելոց հանգիստ, տեսուչ ես ամենայնի, որ գիտես զպէտս եւ զկարիս իւրաքանչիւրոց. նայեա առ մեզ քաղցրութեամբդ քո. երեւեցո զերեսս քո ի մեզ գթութեամբդ քո. լռեցո զհերձուած յեկեղեցւոյ քումմէ. շիջո զխռովութիւն հեթանոսաց՝ որք կամին զպատերազմս. խափանեա զհայհոյութիւն հերետիկոսաց. ընկալ զմեզ յարքայութեան քո. արա զմեզ որդիս լուսոյ եւ տուընջեան, եւ տուր մեզ սիրտ միաբանութեան իբրեւ ի միոջէ բերանոյ փառաւորել զմեծվայելչութիւն սրբութեանդ քո. — ի ձայն. — վասն զի քեզ վայելէ եւ Միածնի Որդւոյդ քո հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:

Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսին:

Սարկաւագն քարոզէ զԱմենայն սրբաւքն որ է ի սուրբ Աթանասի:

Տէր Աստուած մեր, որ պատրաստեցեր մեզ սեղան հոգեւոր (բ)արութեան, եւ շնորհեցեր մեզ կերակուր կենդանարար զանմահ եւ զանապական, զմշտնջենաւորդ եւ զյաւիտենականդ զմարմին եւ զարիւն Միածնի քո. բարձ ի մէնջ ամենազաւր քոյով տէրութեամբդ զկարծիս մեղաց եւ զխիղճ մտաց փարատեա ի մէնջ, եւ ուսոյ ժողովելոցս ի տեղւոջ փառաբանութեան — եւ քահանայն համբարձեալ զձեռս իւր — միաձայն բարբառով բանալ զբերանս մեր, երգել եւ ասել:

### ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂԱՒԹՔ

Սկսանին. Հայր մեր, որ յերկինս ես. սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո, ի լման:

### ԱՂԱՒԹՔ ՅԵՏՀԱՂՈՐԴԱԿԱՆ

Քահանայն. Գոհանամք զքէն, Տէր, Հայր Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ արժանի արարեր զմեզ երկնային պարգեւացս այսորիկ (այսոցիկ), հաղորդութեան մարմնոյ եւ արեան Միածնի քո: Աղաչեմք զքեզ, Տէր. մի՛ լիցի սա մեզ ի դատապարտութիւն յաղագս մեղաց

պակասածն է իբր 42 տող: ||[153] L երեւեցոյ: ||[157] L զմեծավայելչութիւն: ||[159] L հանդերձ... սուրբ Հոգ—ոյդ: ||[161] "Բարութեան„ բառին առաջին տառը (բ) բերուած է ի L: ||[167–8] L "քոյով տրութեամբդ ... եւ զխիղճ մտաց փարատեա„ եւն: ||[169] L միաձայնական բարբառով: ||[177] L այսպէս "այսո-

[39] Թուղթ մը հոս Օրինակէն ինկած է, այսինքն 12ածալ Ը թերթին առաջին թուղթը կը պակսի. թղթի մը ամէն մէկ էջը 21 տող կը պարունակէ, ամէն մէկ տողն ալ 6 կամ 7 բառ: Արդ 2×21 = 42 (տող), 6 կամ 7×42 = իբր 273 բառ գոնէ՝ կը պակսի աս Յիշատակաց մէջէն: Վերջին բառն եղած պիտ'որ ըլլայ՝ "օգնականի:„

# ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

*(Ս. Գրիգորի Աստուածաբանի։)*

---

ԱՂԱՒԹՔ ՈՂՋՈՒՆԻ

Ը. — *Քահանայն.* Ըսկիզբըն Աստուած, Հայր սուրբ, արարիչ գոյից, որ ի հողեղէն բնութեանս մերում ջրով եւ Հոգւով սրբով տպաւորեցեր զնմանութիւն երկնային հրեշտակացն ի փառաբանութիւն ամենասուրբ Երրորդութեանն, շնորհեալ[1] զաւրութիւն աստուածային պատարագիս լինել մշտնջենաւոր խորհուրդ մարմնոյ եւ արեան Միածնի քո. դու սրբեա զմեզ եւ աւրհնեա, եւ արժանաւորս արա մեծի ահաւոր խորհրդոյս՝ ընդունել[2] առ ի մէնջ զխնդիրս[3] բանական, սիրողութեամբ սրտի. զմասն վերհագոյն՝ ձրից, յորում փափաքիմք յարբմանց էիցդ ճաշակել[4]։ Շնորհեա զսա մեզ ի

---

Այս բնագրին հրատարակութեան համար ալ մի միակ օրինակ մ'ունէինք առջեւնիս, այսինքն Լիոնի ձեռագրին ընդօրինակութիւնն կամ L. Ասոր համար ալ կ'արժենայ այն ընդհանուր դիտողութիւնքն՝ զոր նախընթաց բնագրին համար ըրինք, գլխաւորաբար որ ձեռագրին համառօտութիւնքն մի առ մի չենք նշանակեր հոս ծանօթութեանց մէջ, ինչպէս նաեւ այն որ մենք միշտ աւ գրինք, մինչ ձեռագիրն սովորաբար օ կը գրէր՝ օրհնել, շնորհէք եւն։ Բաժանմունք եւ խորագիրք ձեռագրին չեն։ ՀՐՏՐ.

Վերնագիրն այսպէս ունի L. "Աստուածային Պատարագ ասացեալ սուրբ Հօրն մերոյ Գրիգորի Աստուածաբանի։ Մինչեւ առաջին Յովհաննու կարգի եւ կամ Աթանասի։" — Տարբեր է ասկէ՞ Գրիգորի անուամբ Խպտիներու Պատարագը. (Renaudot, Liturg. Or. Coll., ed. secunda, Francofurti, 1847, I. p. 25—37 Liturgia S. Gregorii), ինչպէս նաեւ Աղեքսանդրեան համանուն Պատարագը (Renaudot, I. 85—115 Liturgia S. Gregorii Alexandrina.)

Ա. ‖² L զնմանութիւնն։ ‖¹⁴ ff փակագծեալ մասը կայ ի L, բայց յայտնապէս յաւելուած է՝ մեր սովորական պատարագէն առնուած. նոյնպէս առ

[1] "Շնորհեալ." գուցէ "շնորհեալ։"

[2] "Ընդունել." գուցէ "ընդունելով։"

[3] Թարգմանիչը կարդացած (կամ յոյն մատեանն եղած) է *αἰτίαν* (= զխնդիր), փոխանակ *λατρείαν* (= զպաշտօն)։

[4] "Յարբմանց էիցդ ճաշակել" խօսքը վերջապէս կը մնայ մեզի անիմանալի։ Բոլոր պարբերութեան իմաստն ալ տարտամ պիտի ըլլար՝ եթէ այլուստ մեր Աստուածաբանին յատուկ լեզուն եւ մտածութիւնք ծանօթ չըլլար։ Կը ճանչնանք "խնդիր բանականը"՝ որն որ է իրեն սովոր գործածած *ἔντευξις λογική*, իսկ "մասն վերհագոյն՝ ձրից" (առուելոց յԱստուծոյ) է նոյն իսկ մարդոյն բանական մասը, որով կը փափաքի միշտ առ պատճառն ամենայնի Աստուած։ Հետեւեալ հատուածը ծանօթ Խե. ճառին, գլ. 2. սկիզբներէն՝ եւ աս մեր պատարագին այն առաջին աղօթքը սկիզբէն իսկ՝ ըստ գաղափարաց զիրար կը շօշափեն. Dignum munus offerre vix ipsi quoque angeli possint, illi, inquam, primi et intelligentes et puri, supernaeque gloriae spectatores ac testes . . . Nos autem sermonem, quo nec pulchrius quidquam habemus nec praestantius (*ὧν ἔχομεν τὸ κάλλιστόν τε καὶ τιμιώτατον*) conferemus, praesertim Verbum (*λόγον*) laudantes, ob beneficium, quod ab eo ad naturam ratione utentem (*λογικῆς φύσεως*) profectum est. Ճառ ԽԸ. գլ. 13. Deum ac principem illam causam, natura quidem om-

քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց. — ի ձայն. — շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հաւր միանգամայն եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ յաւիտեանս:

ՈՂՋՈՅՆ

*Սարկաւագն.* Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան[5]. [Եւ որք ոչ էք կարող հաղորդել աստուածային խորհրդոյս, առ դրունս ելէք եւ աղաւթեցէք:

Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք, բարւոք կացցուք. եւ նայեցարուք զգուշութեամբ:

*Դպիրքն.* Առ քեզ, Աստուած:

*Սարկաւագն.* Պատարագ Քրիստոս մատչի զառն Աստուծոյ:]

*Քահանայն.* Շնորհք, սէր եւ աստուածային սրբարար զաւրութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսին[6]:

*Դպիրքն.* Ամէն. եւ ընդ հոգւոյդ քում:

[*Սարկաւագն բարձր.* Զդրունս, զդրունս ամենայն իմաստութեամբ եւ զգուշութեամբ[7]:] Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր աստուածային երկիւղիւ:

*Դպիրքն.* Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ:

*Սարկաւագն.* Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ:

*Դպիրքն.* Արժան եւ իրաւ:

---

24—5: ‖15 L հաղորդէլ: ‖17 L "երկեղիւ ... բարեոք" եւն: "Երկեղիւ" նաեւ ի տողն 25: ‖28 L չունի "Դպիրքն":

nis rationis particeps (πᾶσα λογικὴ φύσις) appotit. Վերջին բայը մեր աղօթքին "փափաքիմք"ը կը յիշեցընէ: Ճառ ԺԶ. գլ. 20. կարկառ մեծ հարուածին վրայ՝ լուռ կեցող հօրը կ'աղաչէ Գրիգոր որ զԱստուած հաշտեցընէ δι' εὐχῆς καὶ λογικῆς ἐντεύξεως: Մաւրինեան հրատարակիչը կ'ըսէ ի Ծան. Sic passim Gregorius mutat, quod Paulus XII. 1, vocat λογικῆς λατρείας, videtur esse oratio, quae fit verbo ac mente, deprecatio, intercessio. Հայ թարգմանիչը "խնդիր" ըսեր է: — Իսկ "սիրողութիւն" կամ "սիրողութիւն սրտի" թարգմանուածը, եթէ չենք սխալիր, նոյն իսկ Գրիգորի առ նիւթիս վրայ խօսած առեն գործածած φίλτρον բառին թարգմանութիւնն է: Զ. Ճառին մէջ գլ. 5. ամէն բանէ վեր՝ յետ Աստուծոյ, զբանն (զխօսս) եւ զբանաւորութիւն յարգելը ըսելէն ետքը, կը յաւելու. Εἰς τοῦτό μοι πᾶν ἐκενώθη τὸ φίλτρον μετὰ Θεόν — in eum (sermonem) omnis meus amor, post Deum, effusus est.

Ուստի դառնալով հայ բնագրին՝ որուն հոս աս կտորը "յորում փափաքիմք յարգմանց էիցդ ճաշակել," ինչպէս Լուգդունեան մատենին մէջ կայ, գուցէ կրնայինք գիր մը միայն թող տալով՝ բժշկել զանիկայ, այս ինքն "էիցդ" գրուածը կարդալ "էիդ," Գրիգոր ὁ ὤν (= "որ էն") կը գործածէ յաճախ:

5 "Ողջոյն տուք." Տես վերը՝ էջ 124:

6 "Շնորհք, սէր...:" Մեր հասարակ պատարագին մէջ եղած սովորական ձեւով. բայց, ինչպէս վստահ ենք, անկէ առնուած չէ, հապա հոն ալ հոս ալ նոյն աղբերէ յառաջ եկած փոփոխութիւն է:

7 "Զդրունս, զդրունս:" — Հաւաքիչը ուրիշ հնագոյն պատարագներէ հոս բերած է անշուշտ:

8 "Արփիական." — անդրաշխարհային ὑπερκόσμιος, զորն որ Երրորդութեան վրայ կը ստորոգէ Ս. Գրիգոր:

### ՆԱԽԵՐԳԱՆ

Բ. — *Քահանայն ի ծածուկ աղաւթէ.* Արժան ճշմարտապէս աՀիւ, Հաւատովք, բոլորով սրտիւ եւ փառաբանութեամբ երկրպագել, Աստուած արփիական[8], անեղական, ինքնագոյ երր(եակ) զաւրութիւն[9], լոյս անմատոյց, արարիչ լուսոյ եւ ամենայն արարածոց երեւելեաց եւ աներեւելեաց, երկնաւորաց եւ երկրաւորաց եւ ամենայն ջրածին կայտառաց[10]: Զքեզ աւրՀնեն բիւրաւոր բանակք Հրեշտակաց, զաւրք երկնայինք, Հոգեւոր երգով, քերովբէք եւ վեցթեւեան սերովբէք, որք զարՀուրեալ յաՀէ փառաց աստուածութեանդ քո, սաւառնեալ թեւաւք ծածկէին յամենայն կողմանց, եւ Հանապազ կան ի սրբասացութեան երեքսրբեան ձայնիւն երգեն, գոչեն, աղաղակեն եւ ասեն. — *ի ձայն.* — զյաղթական աւրՀնութիւնս երգելով, գոչելով, աղաղակելով եւ ասելով՝

*Ժողովուրդն.* Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զաւրութեանց. լի են երկինք եւ երկիր փառաւք քո. աւրՀնութիւն ի բարձունս, աւրՀնեալ:

### ԿԱՆՈՆ

Գ. — *Քահանայն ի ծածուկ.* Խոկզբանցն արարիչ ամենաւրՀնեալ եւ ի սուրբս Հանգուցեալ, որ ոչ յիշելով զյանցանս մեր արարեր մոռացումն մեղաց մերոց, եւ մարդասիրապէս գթացեալ արժանաւորս արարեր ընդ անմարմնոցն զուգափառ կալ առաջի աստուածութեանդ քո, եւ ի Հոտ անուշից քոց մատուցանել զպատարագս զայս, որով Հաշտեսցի արարչական աստուածութիւնդ քո յարարածս ի ձեռն զենման Միածնիդ քո Տեառնդ մերոյ եւ

---

Բ. ‖32 L “ինքնագոյերր զօրութիւն„: ‖38 L ունի “երգեն, գոչեն, աղաղակեն„ եւն. բայց քիչ մ'ետքը “երգելով, գոչելով„ եւն. լաւագոյն կ'երեւայ “գոչեն„ ըստ յոյն բնագրոյ. (Հմմտ. նաեւ Բարսղի պատարագի Նոր Հայերէնը՝ վերը էջ 200. իսկ Հինը՝ “գոչեն„ կ'ըսէ ատոր պէս, տես էջ 130 եւ տող. 35:) ‖39 L “զաղթական„: ‖41 L “Ժողովուրդն եղան[-ջէ„]:
Գ. ‖44 L Խոկըզբանցն: ‖45 L Հանգուցեալ: ‖51 Աղօթքիս ծայրը L ձե-

[9] “Ինքնագոյ երրեակ զօրութիւն.„ — միջին բառը՝ որն որ յայտնապէս ոխալ գրչութիւն մըն է, նայելով Հասարակ պատարագին մէջի “երրեակ միութիւն„ եւ “երրեակ ինքնութիւն„ բացատրութիւններուն՝ կարդացինք Հոս ալ “երրեակ:„ Սակայն ոչինչ ընդՀատ քան զայս՝ մեկալ երկու քովի ձայներուն նշանակութիւնը պէտք ունինք ճշդելու: “Ինքնագոյ„ մեզի Հիմայ սովորական նշանակութեամբ պէտք չենք առնուլ, Հապա իբրեւ “յինքեան կեցող,„ իբրեւ “անձն:„ Ուստի եթէ ἰδιότης = առանձնաւորութիւն, proprietas ձայնը՝ Հոս “զօրութիւն„ թարգմանուած առնունք՝ որն որ մեզի շատ Հաւանական է, բոլոր խօսքը՝ ուրիշ բառերով թարգմանուած՝ կ'ըլլայ “երեք յինքեան կացեալ (ինքնագոյ) յատկութիւն„ = τρισσὴ καθ' ἑαυτὴν ὑφεστῶσα ἰδιότης — trina in se ipsa subsistens proprietas. Վասն զի տաւղ եւ ուղիղ չենք տեսներ ըսելը “երրեակ զօրութիւն„ եթէ աս բառը առաջին նշանակութեամբն առնուբ: Ճառ ԼԳ. գլ. 16. կը գտանի Ս. Գրիգոր՝ μίαν φύσιν ἐν τρισὶν ἰδιότησι καθ' ἑαυτὰς ὑφεστώσας. Վերջին երեք բառը կ'երեւայ թէ կ'ամփոփէ մեր թարգմանիչը՝ “ինքնագոյ„ ձայնին՝ շատ յարմարապէս:

[10] Բ. պատարագին Նախերգանքին արարչագործութեան մասը՝ Հոս իբր 15 բառերով ամփոփուած:

փրկչին Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։...

*Քահանայն խոնարհի.* Որ խոնարհեցար ի հայրական ծոցոյ Յիսուս Քրիստոս, լոյս փառաց եւ նկարագիր էութեան Հաւր, եկիր ի կատարել զամենայն գրեալսն, բառնալով զպատուհաս Նախահաւր. անսկիզբն յէութեան եւ անժամանակ Որդի, ծնար ի սուրբ եւ յաստուածածին Կուսէն Մարիամայ, անքննելիդ Բանդ Աստուած, մարմին եղեալ բնակեցար ի մեզ, ճշմարիտդ Աստուած, մարդացար մտեր ընդ աւրինաւք եւ ընդ կարգեալ ժամանակաւք. վասն զի դու ես աւրէնսդիր եւ ժամանակաց գոյացուցիչ. մինչ ի սուրբ եւ յահեղէցն[11], մկրտեցար աստուածային բնութեամբ[12], եւ լուսաւորեալ պայծառացուցեր[13] զամենայն տիեզերս ի խաւարին կռապաշտութենէ, եւ զամենայն՝ զոր ինչ է ըստ վարուց մարդկային, կրեալ յանձին քում՝ բայց ի մեղաց. իսկ ի կատարեալ ժամանակին՝ որ վասն չարչարանաց խաչին, եկիր ի հասեալ ժամն ասելով՝ փառաւորեսցի[14] որդի մարդոյ. առեր զհացն ի

ւագիրն երկու փոքր աղօթք ալ կը կցէ, որոնք այսպէս անկապ կերպով չկային նախնականին մէջ։ Այս աղօթքներն են. “Քեզ ամենայն արարածք երկնաւորք եւ երկրաւորք բնութիւնք երկիր պագանեն, Մարդասէր Տէր, Հոգի սուրբ. ընդ որս եւ մեք խոնարհեցուցեալ զպարանոցս մեր խնդրեմք յառաջ սիրոյ քո՝ առաքեա զնորոգիչ Հոգիդ սուրբ եւ ճշմարիտ, սրբել եւ մաքրել զմեզ ամենայն ախտից. եւ պարգեւեա մեզ լիապէս եւ աներկեղ եւ անդատապարտ մերձենալ ի կենդանարար եւ յանապական մարմին եւ յարիւն որդւոյն Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ — Այլ աղօթ.։ Քեզ երկիր պագանեմք եւ ի քէն հայցեմք անբաւ բարերարութդ Աստուած. առաքեա դաստիարակ եղեն (այսպէս) իջիցդ վերնական շնորհիւ զնորոգող եւ զմարդասէր Հոգիդ քո սուրբ ի մեզ † եւ ի պատարագս յայս †, զոր եդեալ այժմ առաջի, որպէս զի արասցես զհացս զայս մարմին պատուական Տեառնդ մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի։„ Կոչման-աղօթք է վերջինն, որ այստեղւոյ ամենեւին չի վերաբերիր. ուստի հեղինակը փոխադրած է քիչ մ'եաքը (տող 105 եւն։) ‖[69] Այս “ցած„ խորանագիրը լուսանցքի վրայ գրուած է ի L, ինչպէս նաեւ քիչ մ'եաքը (տող 71) “է յայն„ խորանագիրը։

[11] “Ի սուրբ (եւ) յահեղէցն։„ Հաս Լուգդ. ձեռագրին մէջ, ինչպէս կ'երեւայ, եաքէն “եւ„ մը խօթուած է՝ “սուրբ„էն վերջը “յահեղէց„էն յառաջ, որուն հարազատութիւնը շատ կասկածելի կ'երեւայ մեզի։ Կերեւայ թէ թարգմանիչը՝ բնագրին “սուրբ„ը առած է ածականաբար եւ “ահեղ՝„ գոյականաբար. մենք կ'ընտրէինք մանաւանդ ասոր ներհակը, “մինչ ի սրբոյն ահեղէց։„

[12] “Աստուածային բնութեամբ.„ այս ինքն չէ թէ իբրեւ լոկ մարդ։ Ս. Հայրն առ Կղեդոնիոս Ա. թղթին մէջ՝ Si quis eum ox operibus perfectum fuisse, aut post baptismum vel resurrectionem a mortuis in Filium adoptatum dixerit, a. s. Անոր համար հոս ամենեւին հիմ չկայ կասկածելու թէ մեր հին ամէն տեղ նեստորականութեան դէմ ազգային զինոցներուն մէկ յաւելուածն ըլլայ. օրինակն ալ դեռ չտեսանք ոս պատարագներուն մէջ։

[13] “Լուսաւորեալ պայծառացուցեր.„ — երկու ձայներ՝ զոր մկրտութեան վրայ կը գործածէ Գրիգոր. φωτισμὸς (լուսաւորութիւն) եւ λαμπρότης (պայծառութիւն). տես՝ Ճառ Խ. ի սբ. Մկրտ. գլ. 3։

[14] “Փառաւորեսցի.„ — մտադիր է Ս. Հայրը կրկին փառաւորութիւն զանազանելու՝ “փառաւորել Քրիստոսի՝ չարչարանօք. — փառաւորել յարութեամբ.„ Ճառ ԽԱ. ի Պենտէկ. գլ. 11. δοξασθῆναι τὸν Χριστὸν τῷ πάθει — δοξασθῆναι τῇ ἀναστάσει.

սուրբ, յաստուածային, յանարատ ի ձեռաց՝ աւրհնեցեր, սրբեցեր, գոհացար, բեկեր. ետուր առ ի քէն ընտրեալ եւ բազմեալ աշակերտացն ասելով՝ — ի ճայն.

### ՆՈՒԻՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Առէք կերայք ի սմանէ ամենեքեան. այս է մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց:

Յած. Ըստ նմին եւ զբաժակն առեր ի սուրբ, յաստուածային, յանարատ ի ձեռաց՝ աւրհնեցեր, սրբեցեր, ետուր առ ի քէն ընտրեալ եւ բազմեալ աշակերտացն ասելով. — ի ճայն. — Առէք արբէք ի դմանէ. այդ է արիւն իմ նորոյ ուխտի, որ յաղագս ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց:

Գ.[15]. — Եւ աստուածային տեսակաւդ՝[16] յորում բնակէ ամենայն լրումն աստուածութեանն մարմնապէս, պատարագեցար ի վերայ խաչին, ոչ ի կողմն որիշ ուրեք ինչ մնացեալ կարծիս բաշխիս ի լրումն ամենայնի, եւ ոչ սուղամանեայ ինչ ունելով նիազ իլս[17], այլ լի եւ աստուածացեալ[18] մարմին

Դ. ‖75 L բուն “ի կամղմն:” ‖77 L “նիազիրս:” ‖78 L “եղար ի գերեզմանի է Քրիստոս զօրութիւն Աստուծոյ” եւն: ‖79—80 L “այլ օրնաջանցիկ ընդանուրս աննիազ մնացեալ ի քում մնախազ ակդէութենէ” եւն: ‖87 L “քո Հօր:”

[15] Աս հատուածը կերպ մ'ընդլայնում է Կող. Բ. 9 խօսքին՝ ուր որ Կղեմէսն պատարագէն սկսեալ՝ տեսանք Բարսղի եւ Երկրորդ պատարագին մէջ: Դժուարաւ մարդ կրնայ որոշել թէ դայս մեր պատարագը տեսած չըլլայ Դաւիթ փիլիսոփայ է դարուն մէջ՝ երբ որ կը կարդայ (Նորբ. ի խաչն, էջ 107) աս տողերը. “Աշտնջենական եւ ոչ ատժամեայ զենումն զ'ի սմա զենեալն հաւատայ եկեղեցի. նոյն խորհուրդ զենման մինչ հանապազորդել մինչ ի միւսանգամ նորայն յայտնութիւն՝ ի Տեառնէ իսկ հրամանաարեցաւ:”

[16] “Աստուածային տեսակաւդ.” դիտ'որ ըլլայ μορφή (— forma, դէմ, —) դարձեալ վերյիշեալ մոլորութեան դէմ յայտնի ընելու համար թէ ոչ տանց աստուածութեան, տանց “աստուածային տեսակին,” մինակ մարմինն իբրեւ լոկ մարդ, իբրեւ թէ դեռ ոչ աստուածացած՝ խաչեցաւ կամ պատարագեցաւ: Տես Թղթ. առ Կղեդոնիոս:

[17] “Եւ ոչ սուղամանեայ ինչ ունելով նիազ իլս”: — Լուգդ. մասնկնին մէջ գիր առ գիր սանկ գրուած է. “ոչ ի կամղմն որիշ ուրեք ինչ մնացեալ կարծիս բաշխիս ի լրումն ամենայնի, եւ ոչ սուղամանեայ ինչ ունելով նիազ իլս, այլ...:” Կայ խանգարում. սակայն ոչ այնչափ բաներ՝ որչափ տառանձին գրեր միայն ուղղելու պէտք ունինք, բարեբախտութեամբ հոս ալ Սրբոյ Հօր վերջին (ԽԵ) ճառէն շատ աղէկ առաջնորդուելով: Հոն (գլ. 13.) կ'ըսէ. τὸ μέγα καὶ ἄδυτον ἱερεῖον, ἵν' οὕτως εἴπω, ὅσον ἐπὶ τῇ πρώτῃ φύσει, ταῖς νομικαῖς θυσίαις ἐγκαταμέμικται, καὶ οὐ μικροῦ μέρους τῆς οἰκουμένης, οὐδὲ πρὸς ὀλίγον, ἀλλὰ παντὸς τοῦ κόσμου καὶ διαιωνίζον καθάρσιον — Magna illa, et, quantum ad primam naturam, immactabilis, ut ita loquar, victima, legalibus sacrificiis immixta est; illa, inquam, non exiguae cujusdam partis orbis terrarum, nec ad exiguum tempus, sed totius mundi nunquam intermoritura expiatio. Ըստ այսմ “ի կամղմն,” կ'ուղղուի “ի կողման” — “բաշխիս,” կ'ըլլայ “աշխարհիս” — “ի լրումն,” կ'ընենք “լրումն,” (հոլովական) — “սուղամանեայ,” կ'ըլլայ “սուղժամանակեայ” = πρὸς ὀλίγον, ad exiguum tempusին համեմատ. — “նիազ իլս” կը թողունք այնպէս՝ զուն որ կ'երեւայ թէ պէտք էր ընել “նիազէս” (= պակասիս, նուազիս): Սակայն թէպէտ նախնաբար այսպէս մտածած ըլլանք վերջին մասին, (այս ինքն “սուղամանեայ” եւ “նիազ իլս” ձայներուն նկատմամբ) ուզելով չթողուլ վերյիշեալ Գրիգորի խօսքին թելը, բայց ետքի մտադրութեամբ կը տեսնենք որ հիմ մը չկայ աս մասին Լուգդ. Օրինակին ընթերցուածին վրայ եւ ոչ կասկածելու իսկ. վասն զի մնալով ալ

միանջենաւոր[19] եղար ի գերեզմանի Քրիստոս զաւրութիւն Աստուծոյ[20] եւ իմաստութիւն, ոչ տեսեր զապականութիւն. այլ սթափանցիկ ընդ հանուրս աննուազ մնացեալ ի քումդ նախագոյակդ էութենէդ՝[21] որ ի մեռեալս ազատ առանց աւգնականի, աւերեցեր զդժոխս. խորտակեցեր զզաւրութիւն մահու՝ յարուցեալ ի մեռելոց ճշմարիտ Աստուած ծանուցար կենդանեաց եւ մեռելոց։[22]

Նա արդ մեք, Տէր, զառ ի քէն պարգեւեալ մեզ զընծայս պատարագեմք ի վերայ աստուածընկալ սեղանոյս. յիշեմք զսուրբ չարչարանսն՝ որ ի վերայ խաչին յաղագս մեր, զթաղումն երեքաւրեայ, զյառնելդ ի մեռելոց, զհամբարձումնդ յերկինս, զնստելդ ընդ աջմէ քոյ Հաւր. — ի ձայն. — զահաւոր եւ զփառաւորեալ եւ զմիւսանգամ գալուստդ խոստովանիմք եւ աւրհնեմք։

*Ժողովուրդն.* Յամենայնի։

Ն. — *Քահանայն.* Զքեզ աւրհնեմք եւ փառաւորեմք եւ հաւատով երկիր պագանեմք, որ երիւք ըստ անձնաւորութեան[23] ինքնագոյ էակդ ես. վասն զի բաշխիս անբաժանաբար եւ միաւորիս որոշմամբ[24], ոչ զմիութիւնդ խառնակութիւն գործելով եւ ոչ զբաժանումնդ աւտարութիւն[25] համարելով. այլ երեքանձնեայ անճառ միութեանդ սրբոյ Երրորդութեան մատուցանեմք զաւրհնութիւն եւ զփառս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Աստուծոյ։

---

նոյնպէս "սուղամասնեայ" եւ "նուազ իրս", ամբողջ կու տան ան հարկաւոր իմաստը՝ զոր որ կը պահանջէ յաջորդ պարբերութիւնը. այսինքն թէ "եւ ոչ ալ փոքու իւիք մասամբ նուազութիւն մ'ունենալով (այս ինքն՝ մարմինդ մահուընէ ետքը մէկդի թող չտալով), հապա լիուլի, աստուածացեալ (աստուածութենէն չբաժնուած) մարմինդ միանջենաւոր՝ գրուեցար գերեզմանի մէջ։"

18 "Աստուածացեալ." — շատ սովորական մեր Ս. Հոր. անանկ որ "մարդացեալ, ներմարդութիւն," շատ քիչ տեղ՝ "մարմնաւորութիւն" ըսելու տեղ՝ սիրով կ'ըսէ θέωσις.

19 "Միանջենաւոր" — նախընթաց վերջընթեր ծանօթութեան մէջ յառաջ բերուածը՝ կու տայ ասոր յունարէնը διαιωνίζον = "միանջենաւորող," չէ թէ՝ ինչպէս մոլորութիւնը կ'ըսէր՝ փրկութեան գործը լմնցնելէն ետքը մէկդի դրուած։

20 "Ի Քրիստոս Աստուծոյ զօրութիւն." — Լուգդ. մատենին կը վերցընենք ի նախդիրը, եւ կը դնենք "Քրիստոս։"

Քիչ մը անդին "սթափանցիկ" կը գրէ նոյն մատեանը. մենք՝ "ըստ թափանցիկ։"

21 "Նախագոյակ էութիւն" ի Քրիստոս, ասկէ չորս ծանօթութիւն առաջ յունարէն յառաջ բերուած πρώτη φύσις ըսուածն է, այս ինքն Քրիստոսի Տեառն մերոյ աստուածային բնութիւնը, զոր որ թարգմանիչը սիրական ձեւովը շրջած է։ Ս. Գրիգոր՝ Տեառն մերոյ չէ թէ մինակ բնութիւնները երկու կը համրէ, հապա նաեւ առաջին եւ երկրորդ կը դասէ, նոյնպէս հայ թարգմանիչն ալ, ով որ է նէ՝ որը նախ գտնուած եւ որը յետոյ եղած՝ կ'որոշէ։

22 Հռոմ. ԺԴ. 9։

23 "Անձնաւորութիւն." տես քիչ մը վարը՝ Դ. Պարգ. ծան. 6։ Յունարէնը ճառ ԼԹ. գլ. 11. τρισὶ μὲν κατὰ τὰς (ἰδιότητας ἤγουν) ὑποστάσεις, մեր պատարագին բնագրին մէջ միայն ὑποστάσεις կայ եղեր, չէ թէ փակագծի մէջ առնուածն ալ. վասն զի "անձնաւորութիւն" մինակ աս վերջին յոյն բառին կը վերաբերի։

24 "Միաւորիս որոշմամբ." — Նոյն ճառին մէջ քիչ մը յառաջ կայ՝ διαιρεῖται γὰρ ἀδιαιρέτως καὶ συνάπτεται διῃρημένως. (Ճառ ԻԸ. գլ. 1. ἑνικῶς διαιρουμένη (ἔλλαμψις), καὶ συναπτομένη διαιρέτως.) — Հայկազն. Բառգրքին մէջ՝ "բաժանի անբաժանաբար." Աստուածաբ. Յայտն. "Առ Ս. Երր. բաժանել՝ անբաժանապէս եւ միաւորել որոշմամբ." Խոսրովիկ։

25 "Օտարութիւն." — նախընթացէն քիչ մը ետքը ըսուածը οὔτε τὴν ἕνωσιν, σύγχυσιν ἐργαζόμενοι, οὔτε τὴν διαίρεσιν, ἀλλοτρίωσιν = օտարութիւն, նոյն էութենէ չըլլալ։

26 Ս. Գրիգոր այսպէս կը խօսի գոյափոխեալ տեսակներուն վրայ. "աստուածացեալ

*լով, աղաչանաւք նոցա այց արա մեզ, Աստուած, եւ յիշեա զամենայն զննջեցեալսն մեր յուսով յարութեան կենացն յաւիտենից։ Ամէն։*

*Աստուածային բարերարութեամբդ քո յիշեա, Տէր, զսուրբ կաթուղիկէ առաքելական եկեղեցի՝ զոր փրկեցեր պատուական մարմնով եւ արեամբդ քո, եւ լուսաւորեալ պայծառացուցեր ամենայաղթ սուրբ խաչիւդ քո, շնորհեա սմա զանշարժ զխաղաղութիւն քո։*

*Աստուածային բարերարութեամբդ քո յիշեա, Տէր, զվերակացու եւ զտեսուչ հոգւոց մերոց զհայրապետն*[37] *մեր, եւ շնորհեա նմա ճշմարիտ հաւատով եւ ուղղափառ վարդապետութեամբ հովուել զառ ի քեզ հաւատացեալ ժողովուրդս եւ զառաջիկայ ժամանակս կենդանութեան իւրոյ։*

*Աստուածային բարերարութեամբդ քո յիշեա, Տէր, զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս՝ որք ուղիղ համառաւտեն զբանն ճշմարիտ քարոզութեան, եւ շնորհեա նոցա ժամանակ խաղաղութեան ի բարւոք ծերութեան։*

*Աստուածային բարերարութեամբդ քո յիշեա, Տէր, եւ զիս զտաժանեալս մեղաւք*[38]*, յահագին աւուրն համառաւտի, եւ վասն որոյ պատարագիս՝*

---

‖150 Լ առաստաղներա չէ։ — Այս տողին մէջ կէտերով նշանակուած տեղը մեծ դատարկ մը կայ, ինչպէս արդէն նշանակուած է Լիոնի ձեռագրին Պարիսեան ընդօրինակութեան մէջ (Suppl. Arm. Nr. 50, fol. 81b) թէ "Պակաս գուցէ անդ եր իջի միոյ ի ձեռագիր։" Հոս դիտել կու տայ Յարդ. հեղինակն որ "իրզք պակաս է, այսինքն Ը. Բերլինի տուոջին Բողինը. վասն զի այսպէս ընդօրինակողէն նշանակուած են թերթերը, ամէն մէկ թերթը՝ 12 թուղթ։ Երեսները բոլորգիր միջակ 21 տող կը պարունակեն 6—7 բառերով։" Ըստ այսմ

[37] "Զհայրապետն մեր." չէ թէ հիմնակուած "հայրապետի" կամ "պատրիարքի" նշանակութեամբ. հապա սուրբ մանաւոր առմամբ մը՝ որն որ սովորական է Գրիգորի, եւ հոս սուրբ անհատ անձի մը վրայ, այս ինքն իր համանուն հօրը՝ Նազիանզու պարզ եպիսկոպոսի մը վրայ ըսուած։ Ինք իսկ Ս. Հայրը, Ճառ ԽԲ. գլ. 23. (վերջին ողջոյն Կ. Պոլսեցւոց) եպիսկոպոսները այսպէս կ'անուանէ, ակնարկելով Վաղէսի ատեն եղած քանի մը ծերունի եպիսկոպոսաց սպանութիւնը՝ կ'ըսէ. *Οὐ πρεσβυτέρων ἐπισκόπων, οἰκειότερον δὲ πατριαρχῶν εἰπεῖν, σφαγὰς δημοσίας.* Լա. Annon publicas senum episcoporum, aut — ut aptiore verbo utar, — patriarcharum caedes. Այլապէս չէր անուանէր Գրիգոր իր գրեթէ 100ամեայ ծերունի հայրը։ Ճառ ԽԳ. գլ. 37. (գովեստ Ս. Բարսղի) կ'ըսէ. Ad eum (Basilium) ungendum viros pietate claros... excitavit (Spiritus S.), et cum iis novum Abrahamum et Patriarcham nostrum, parentem, inquam, meum. Այս եւ նոյն է մեր պատարագին "զհայրապետն մեր" ալ՝ որն որ շատ ժամանակ չի կրնար ունենալ ապրելու. ոչ թէ անոր համար կ'աղօթէ որդին, ինչպէս սուրբ պատարագներուն մէջ կ'ըլլայ, որ "ընդ երկայն աւուրս" կեայ եւ հովուէ, հապա միայն՝ որ նաեւ ան մնացած կենաց (քիչ) ատենն ալ ուղիղ վարդապետութեամբ հովուէ. անոր համար ալ վերյիշեալ "Կարկառ" ճառին մէջ՝ որմէ առ մեր պատարագը հաղիւ ամփոփերով եղբը կրնայ ի գիր առնուած ըլլալ (373, 374ին) ատեն կը խօսի ալ տարիներով ծանրաբեռնած հօրը համար. (գլ. 3.) Magnam vitae partem sine reprehensione confecit, et jam communis hujus vitae maris velut in portu est, tutior ac proinde beatior sit, quam is, cui longe adhuc navigatio superest? Եւ քիչ մը ետքը (գլ. 4.) լուռ կեցած հօրը դարձնելով խօսքը՝ Ne nobis, non tam paucos, quam suaves sermones invideas, nec jam impendentis detrimenti praeludium praebeas. Loquere, quaeso, etsi pauca, at mihi chara et dulcissima. Չէր կրնար արդէն աս կասկածած օրհասն ուշանալ. 374ին կէսերը ստիպուած էր իր հօրը դամբանականը խօսելու. (Ճառ ԺԸ.)։

[38] "Եւ զիս զտաժանեալս մեղօք." զԳրիգոր օգնական հօրը՝ ի կառավարութեան եկեղեցւոյն Նազիանզու։

զոր հաւատով մատուցանեմ առաջի ահաւոր աստուածութեանդ քո, առատաձեռնեա ինձ զբարերարութիւնդ քո, մարդասէր Տէր: . . .[39] անաւգնականից, յոյս յուսացելոց, խռովելոց հանգիստ, տեսուչ ես ամենայնի, որ գիտես զպէտս եւ զկարիս իւրաքանչիւրոց. Նայեա առ մեզ քաղցրութեամբդ քո. երեւեցո զերեսս քո ի մեզ գթութեամբդ քո. լռեցոյ զհերձուած յեկեղեցւոյ քումմէ. շիջոյ զխռովութիւն հեթանոսաց՝ ուր կամին զպատերազմն. խափանեա զհայհոյութիւն հերետիկոսաց. ընկալ զմեզ յարքայութեան քո. արա զմեզ որդիս լուսոյ եւ տուընջեան, եւ տուր մեզ սէր միաբանութեան իբրեւ ի միջէ բերանոյ փառաւորել զմեծվայելչութիւն սրբութեանդ քո. — ի ձայն. — վասն զի քեզ վայելէ եւ Միածնի Որդւոյդ քո հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:

Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսին:

*Սարկաւագն քարոզէ զԱմենայն սրբաւքն որ է ի սուրբ Աթանասի:*

Տէր Աստուած մեր, որ պատրաստեցեր մեզ սեղան հոգեւոր (բ)արութեան, եւ շնորհեցեր մեզ կերակուր կենդանարար զանմահ եւ զանապականդ, զմշտնջենաւորդ եւ զյաւիտենականդ զմարմին եւ զարիւն Միածնի քո. բարձ ի մէնջ ամենազաւր քոյով տէրութեամբդ զկարծիս մեղաց եւ զխիղճ մնաց փարատեա ի մէնջ, եւ ուսոյ ժողովելոցս ի տեղւոջ փառաբանութեան — *եւ քահանայն համբարձեալ զձեռս իւր* — միաձայն բարբառով բանալ զբերանս մեր, երգել եւ ասել:

ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂԱՒԹՔ

*Սկսանին.* Հայր մեր, որ յերկինսդ ես. սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո, *ի լմին:*

ԱՂԱՒԹՔ ՅԵՏՀԱՂՈՐԴԱԿԱՆ

*Քահանայն.* Գոհանամք զքէն, Տէր, Հայր Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ արժանի արարեր զմեզ երկնային պարգեւացս այսորիկ (այսոցիկ), հաղորդութեան մարմնոյ եւ արեան Միածնի քո: Աղաչեմք զքեզ, Տէր. մի լիցի սա մեզ ի դատապարտութիւն յաղագս մեղաց

պակասածն է իբր 42 տող: ‖[153] L երեւեցոյ: ‖[157] L զմեծավայելչութիւն: ‖[159] L հանդերձ... սուրբ Հոգւոյդ: ‖[164] "Բարութեան" բառին առաջին տառը (Բ) քերուած է ի L: ‖[167–8] L "քոյով տէրութեամբդ ... եւ զխիղճ մնաց փարատեա" եւն: ‖[169] L միաձայնական բարբառով: ‖[177] L այսպէս "այսո-

[39] Թուղթ մը հոս Օրինակէն ինկած է, այսինքն 12ածալ Ը թերթին առաջին թուղթը կը պակսի. Թղթի մը ամէն մէկ էջը 21 տող կը պարունակէ, ամէն մէկ տողն ալ 6 կամ 7 բառ: Արդ 2×21 = 42 (տող), 6 կամ 7×42 = իբր 273 բառ գոնէ՝ կը պակսի աս Յիշատակաց մէջէն: Վերջին բառն եղած պիտ'որ ըլլայ՝ "օգնական:"

մերոց, այլ ի քաւութիւն յանցանաց, ի զգաստութիւն խորհրդոց, ի կատարումն ամենայն գործոց առաքինութեանց. որպէս զի սրբելով[40] սորա զմեր հոգի եւ զշունչ եւ զմարմինս, պատրաստեսցէ լինել տաճար բնակութեան ամենասուրբ Երրորդութեանդ առ ի դաւանել մեզ զողորմութիւն առաջի ահաւոր բեմին, մասն եւ վիճակ ժառանգութեան առնուլ ընդ ամենայն սուրբս ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ յաւիտեանս:

*Քահանայն ի ձայն ասէ զաղաւթս.* Զի քո է արքայութիւն եւ զաւրութիւն եւ փառք յաւիտեանս: — Խաղաղութիւն ընդ ամենեսեան:

[Քեզ ամենայն արարածք, եւն[41]]:

ԱՂԱՒԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑՒՈՅ

Զքէն գոհանամք, Տէր բարերար, եւ աղաչեմք՝ զի յամենայն ժամ արժանաւորս արարեր զմեզ համարձակութեամբ սրտիւ հաղորդութեանս այսմիկ մինչեւ ցվախճան կենաց մերոց. եւ զկատարումն մեր կնքեսցես խոստովանութեամբ քրիստոնէութեան վախճան մեզ շնորհելով. որպէս զի պահելով զպատուիրանս քո ի կեանս յայսմիկ, յերկրորդ գալստեանդ քո փառաւք Հաւր եւ ամենայն հրեշտակաւք յափշտակեսցուք ամպովք ընդ առաջ քո յաւդս. եւ ժառանգեսցուք զպատրաստեալ տեղի ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց, եւ ընդ նոսին միշտ գոհանալով փառաւորեսցուք զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգիդ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս. — *ի ձայն.* — շնորհաւք եւ գթութեամբ եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում աւրհնեալ ես, Հայր ամենակալ, հանդերձ ամենասուրբ եւ բարերար եւ կենդանարար քո Հոգւովդ այժմ եւ միշտ:

*Սարկաւագն.* Պռաւսխաւմէն: — *Քահանայն.* Ի սրբութիւն սրբոց:

*Ժողովուրդն.* Միայն սուրբ, միայն Տէր, Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հաւր. ամէն:

*Նոյն խորհրդածութիւն կատարի բեկանելոյ հացին եւ հաղորդութեանն, որպէս զսուրբ Աթանասիու, եւ արձակման աղաւթք՝* Որ աւրհնես զայնոսիկ, *եւ արձակին խաղաղութեամբ ի տունս իւրեանց:*

---

ըեկ„ փխ. "այսոցիկ„. յետոյ՝ "հաղորդութեանն:„ ‖178 L սոյ: ‖179 L ի զգաստութիւն: ‖188 Հոս նշանակուած է "Քեզ ամենայն արարածք„ աղօթքն (տես վերը՝ տող 51 եւ 112—118), որ թերեւս այս տեղւոյ ալ կարելի ըլլայ յարմար տեսնուիլ: ‖195 L ամպքք:

40 "Սրբելով սորա:„ — Վասն օծանելոյ զանդամս սուրբ արեամբն՝ տես Նոյն Ժ.Զ. Ճառի գլ. 11:

41 Այս աղօթքը տես վերը՝ Համ. Ի, "Կատարումն:„ — Կանոնէն ետքը Դ. աղօթքը կ'երեւայ եղած ըլլալ գէթ ի վեր քշած երկու աղօթքներէ՝ այս ինքն Յետհաղորդական (Post-communio) "Գոհանամք զքէն, Տէր, Հայր Տեառն.„ եւ Աղօթ. է Գէ [illegible]՝ "Զքէն գոհանամք, Տէր բարերար, եւ աղաչեմք„ եւն:

## Գ.

## ՉՈՐՐՈՐԴ ՊԱՏԱՐԱԳ

*(անուամբ Կիւրղի Աղեքսանդրացւոյ:)*

---

### ԱԶԴՈՒՄՆ

1. *Աս պատարագը դարձեալ Ս. Գրիգորի կը սեպհականուի, վերցուելով Կիւրղի Աղեքսանդրու հայրապետին անունը։*

2. *Դարձեալ. փառաւոր “Ողջունի աղօթքէ„ մը ետքը կը յաջորդէ “Ընծայացութեան աղօթք„ մը՝ որուն կը հետեւի լիակատար աղօթք մը “Սրբագործութեան„ անհերքելի յաղթական խորհրդով։*

3. *Խաչելութեան յիշատակաւ՝ որն որ երկու աստուածային եւ մարդկային կենդանութիւնը կը ցուցընէ սքանչելապէս ի կողէն բխածէն, մի եւ նոյն ատեն ի դժոխս եւ ի գերեզմանի աստուածաբար ներկայանալով։*

4. *Հոգւոյն սրբոյ ներգործութիւնը կը խնդրուի իրապէս օժանդակութեամբ ի հաւատացեալս։*

5. *Պաղատանք Եկեղեցւոյ, եպիսկոպոսին, բարերարաց, իշխանաց, թագաւորաց. ամենայն վտանգից վրայ, ի մասնաւորի գիջային փորձութեանց դէմ։ Աս պաղատանքը կը սպասուէր ի Սրբոյն։ Ի վարուց Սրբոյն գիտենք որ անօգուտ եղած էր ասոր դէմ՝ ծերութիւնը, հիւանդութիւնը եւ ուրիշ խատամբերութիւնները։ (Տես վարը՝ ծան. 32։)*

6. *Յիշատակք՝ կատարելագործուած են։*

7. *Աղօթքները՝ վերջերը կատարեալ են։*

8. *Ժամանակը գրութեան՝ յայտնի է, այս ինքն հօրը կենդանութեանը գրուած 374էն առաջ։*

---

# ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

## ԱՂԱՒԹՔ ՈՂՋՈՒՆԻ

Ը· — *Քահանայն ի ծածուկ·* Տէր զաւրութեանց, Աստուած[1] ամենակալ, գոյացուցիչ եւ ստեղծիչ ամենայն եղելոց, ողորմած, պարգեւատաշխ, եւ ամենայն բարութեանց տուող· քեզ խոնարհեցուցանեմք զերկրպագութիւն, եւ մատուցանեմք փառաբանութիւն եւ պաղատանս· ընկալ, Տէր, բարերարութեամբդ քեզ ի հաճոյս· եւ առատապարգեւեա ի մեզ զառատ բարերարութիւնդ քո· վասն զի քո անբաւ մարդասիրութեանդ (քո) շնորհս ապաւինելով՝ համարձակիմք ահիւ եւ դողութեամբ կալ առաջի սրբոյ սեղանոյ քո ի սպասաւորութիւն փառաւորեալ եւ ահաւոր տէրութեանդ քո, եւ ի քէն հայցեմք զթողութիւն մեղաց եւ սրբութիւն ամենայն զգայութեանցս մերոց, որովք միշտ դատապարտեալ գտանիմք առաջի արդարութեանդ քո։ Այլ դու, երկայնամիտ եւ անոխակալ Տէր, որ քննես զծածուկս սրտից մերոց, եւ զանդործս մեր տեսանեն աչք քո, դու սրբեա զմեզ յամենայն պղծութեանց հոգւոց եւ մարմնոց· որպէս զի անարատապէս զաւրացեալք ի քեզ՝ կացցուք առաջի քո անդատապարտք, եւ համարձակութեամբ սրտիւ մատուսցուք զխորհրդականութիւն մարմնոյ եւ արեան Միածնիդ քո ի փրկութիւն մեզ եւ ժողովրդեանս անգիտութեան, եւ ի

Այս Պատարագին հրատարակութեան ալ հիմ առնուած է մի միակ ձեռագիր մը՝ L կամ Լիոնի օրինակը, ինչպէս նախընթաց երկու Պատարագացն ալ։ Այն երկուքին համար բաժնիս հոս ալ կ'արժէ, ի մասնաւորի համառօտութեանց եւ ուղղագրութեան մասին։ ՀՐՏՐ·

Վերնագիրն այսպէս է· "Աստուածային Պատարագ արարեալ սրբոյն Կիւրղի Աղեքսանդրացւոց հայրապետին։" — Ասոր չի վերաբերիր Կիւրղի անուամբ Ասորւոց քով գտնուած Պատարագը· (Liturgia Sancti Cyrilli առ Renaudot, Lit. Or. Coll., ed. secunda, Francofurti 1847, II, p. 274—285.) եւ ոչ Խպտիներուն համանուն Պատարագը (Renaudot, I, 38—51.)

Ա· ‖[1] "Քահանայն ի ծածուկ" խորագիրն՝ որ ինքնին կը հասկցուի, չկայ հոս ի L· այլ տեղ ստ դիտողութիւնը՝ "Աոֆ ոըդեօ Աճանաքօօ ոըդեօ ի խորհրդոյն բերելն ի սեղանն։" — Սկիզբն է բուն ի L՝ "Տէր Աստուած, զօրութեանց, Աստուած ամենակալ" եւն· սակայն առաջին "Աստուած" բառը եղջէն գրուած է կարմրաւ եւ գլխագիր՝ թէեւ միեւնոյն գրչէն։ ‖[2] L գոյանցուցիչ։ ‖[3] L տուօղ... զերկրպագութիւնն... փառաբանութիւնն։ ‖[6] Այսպէս երկու անգամ կրկնուած է ի L "քո" դերանունը։ ‖[8] L ի սպասաւորութիւնն։ ‖[9] L զթո-

[1] Օրինակին մէջ "Տէր Աստուած," բայց "Աստուած" եղջէն աւելցուած է, թէպէտ եւ նոյն գրչով։

[2] Տեռ ստ փակագծին մէջ եղածներուն նկատմամբ մեր վերը էջ 124 գրածները։

հաճոյս բարեհամբաւութեանն ամենասուրբ Երրորդութեանդ, — ի ձայն. — որում միայնոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։

Դպիրքն. Ամէն։

ՈՂՋՈՅՆ

Սարկաւագն. Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան. [որք ոչ կարող էք հաղորդել աստուածային խորհրդոյս եւ առ դուրս ելէք, եւ աղաւթեցէք։ Ու ողջունեն զսեղանն եւ զմիմեանս: Սարկաւագն. Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք, բարւոք կացցուք. եւ նայեսցուք զգուշութեամբ։ Դպիրքն. Առ քեզ, Աստուած։ Սարկաւագն. Պատարագ Քրիստոս մատչի գառն Աստուծոյ։ Դպիրքն. Ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ աւրհնութեան։ Քահանայն դառնայ ի ժողովուրդն[2].] Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ սէր Աստուծոյ Հաւր եւ հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսեան †։

Դպիրքն. Եւ ընդ հոգւոյդ։

Սարկաւագն. Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր աստուածային երկիւղիւ։

Դպիրքն. Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ։

Սարկաւագն. Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ։

Դպիրքն. Արժան եւ իրաւ։

ՆԱԽԵՐԳԱՆ

Ք. — (Քահանայն.) Անսկիզբն Աստուած, անեղ, անժամանակ, անբաւ, անփոփոխելի, անքննելի, մեծութիւն անչափ, յաւիտենական մշտնջենաւոր, մշտնջենաբուխ, տեսակ անորակ[3], անմահ, անմահութեան աղբիւր, բարեաց տուող, Հայր սուրբ, Որդիդ Միածին, Հոգիդ սուրբ ճշմարիտ[4], միասնական[5] աստուածութիւն, երեքսրբեան առանձնաւորութիւն[6], բարձրեալ,

---

ղութիւնն մեղաց եւ սրբութիւնն եւն։ ‖[22] L ի համբոյր սրբութեանն։ — փակագծեալը կայ ձեռագրին մէջ, բայց անշուշտ յետսամուտ համարելու է։ ‖[24] L "եւ զսեղանն" փխ. "զմիմեանս։" ‖[25] L "երկեղիւ ... բարիոք" եւն։ — Ցեռոյ՝ "Դպիրքն" չկայ ի L, բայց կը հասկցուի. նոյնպէս նաեւ յաջորդ տողերուն մէջ քանի մ'անգամ "Սարկաւագն" եւ "Դպիրքն" խորագիրքը։ ‖[29] L հաղորդութիւնն Հոգւոյն։ ‖[32] L երկեղիւ։

Ք. ‖[37] L չունի խորագիրս "Քահանայն"։ ‖[38–9] L մեծութիւնն անչափ

[3] "Տեսակ անորակ" — ինչպէս Ճառ ԼԷ. գլ. 2. ἡ ἀνείδεος (φύσις) կամ թէ մանաւանդ Ճառ Ի. գլ. 6. ἄποιος (θειότης) — qualitatis expers (divinitas).

[4] "Սուրբ ճշմարիտ" մեկբայօրէն. Ճառ ԻԵ. գլ. 15. "Ճշմարիտ սուրբ՝ Հոգին սուրբ — քանզի ոչ եթէ յաւելուած ինչ ի նա սրբութիւնն, այլ յանձն իսկ սրբութիւն." (ἀληθῶς ἅγιον τὸ Πνεῦμα τὸ ἅγιον — οὐδὲ ἐκ προσθήκης ὁ ἁγιασμός, ἀλλὰ αὐτοαγιότης.) տեղ առ այս կը գտնայ։

[5] "Միասնական," Թուի յն. ἑνική. տեղ առ Աստուածաբանին. Ճառ ԼԳ. գլ. 8, զոր որ երբեմն ոմանք "միական" թարգմանած են, ինչպէս Սուտ-Դիոնեսիոսի գործոց մէջ։

[6] "Երեքսրբեան առանձնաւորութիւն," յն. τρισάγιος ἰδιότης — ter sancta proprietas.

աՀաւոր, Հզաւր, աՀեղ, պքանչելագործ, Հրաշազան, Հրաշակերտ, Հրաշազանութեանց յաւրինող, լոյս՝ լուսոյ արարիչ, կեանք՝ կենդանեաց գոյացուցիչ, ամենակալ, ամենակարող, ամենիմաստ, ամենաբաւական, ամենաստեղծ, ամենապարգեւ. քեզ միայնոյ երեքսրբեան տէրութեանդ յարժանի եւ յիրաւի վայելէ վերառաքել զփառաբանութեան երգս, որ դու միայն[7] աստուածազանութեամբ Հրաշագործեցեր զերկինս եւ զերկիր եւ զամենայն՝ որ ի նոսա արարածք երեւելիք եւ աներեւոյթք. վասն զի ամենեքին անճառելի ձայնիւ[8] փառաւորեն զքո փառաւորեալ աստուածութիւնդ իմանալի եւ անիմանալի խորՀրդականութեամբ[9]: Արժանաւորեա, Տէր, քոյին գթութեամբդ զմեր անարժանութիւնս ընդ վերնական դասուցն[10] աւրՀնաբանութեան երգել քեզ յաղթական երգս, որք զարՀուրեալք ի Հրակիզանող ճառագայթարձակ լուսոյ աստուածութեանդ թեւաքողեալք գեղապարութեամբ[11] երգեն քեզ զսրբասացութեան գնուագսն. —վերածայնէ քաՀանայն. — Համարձակութեամբ նոցին եւ մեզ աղաղակել եւ ասել:

---

... մրչարընջենաբուխ եւն: ||[40] L տուօղ: ||[41] L աստուածութիւնն: ||[43] L յօրինօղ: ||[53] L թեւաքօղեալք:

[7] "Որ դու միայն" — նախընթաց պատարագին Նախերգանին ստեղծագործութեան բաւական ընդարձակ մասը Հոս պարպէս կը Համառօտուի՝ "որ դու միայն" խօսքէն մինչեւ "խորՀրդականութեամբ:"

[8] "Անճառելի ձայնիւ." Ճառ. ԽԴ. գլ. 11 (յամի 383 Ապր. 16). Omnia Deum laudant et concelebrant vocibus mutis, (δοξάζει φωναῖς ἀλαλήτοις. Թողունք բոլոր խօսքը, մանաւանդ պէս վերջին ἀλάλητος բառը մեր պատարագին մէջ "անճառելի" ձայնն է, յոյն ձայնին նիւթական փոխադրութիւն մը՝ որն որ "անբարբառ" թարգմանելով կրնար աւելի գիւրիմաց ըլլալ: Լատին թարգմանն ըրած է "Համր ձայնիւ" — vocibus mutis. Աստուածաբանին գործոց Մաւրինեան Հրատարակիչը Հարկ կը Համարի յաւելուլ բէնն ալ մեկնել "ἀλαλήτοις — ineffabilibus, sermonis expertibus." Մեզի Համար բուն մտադրութեան արժանին՝ Հոս մի եւ նոյն եղեգան Հետքը գտնելն է:

[9] "Իմանալի եւ անիմանալի խորՀրդականութեամբ." — որոշ չենք գիտեր՝ ինչ Հասկընանք: Աւելի առաջ եւ աւելի ետքը կը տեսնենք որ աս "խորՀրդականութիւն" ձայնը թարգմանիչէն իբրեւ "խորՀուրդ" (μυστήριον) կը գործածուի. բայց ինչպէս "խորՀուրդ" բառին, նոյնպէս "խորըՀրդականութիւն" ձայնին նախնական նշանակութենէն երգմամբ Հրաժարած չէ մեր թարգմանը. անոր Համար Հոս "խորՀրդականութիւն" իրեն նախնական նշանակութեամբն առնելով՝ բոլոր խօսքը կը նշանակէ "իմանալի (իմացող) եւ անիմանալի (չիմացող) մտածութեամբ." ըստ ամենայնի քիչ մ'առաջ՝ "անբարբառ ձայնիւ" (φωναῖς ἀλαλήτοις, vocibus mutis) բառերին Համեմատութեամբ չինուած Հակադրական բացատրութիւն մը՝ որն որ շատ աղէկ նախընթացին Հետ կը զուգի: Ի նոյն կը յանգի՝ ինչ որ կ'ըսուի նաեւ ի Ճառ ԽԵ, գլ. 7: Աս ճառը, ինչպէս նախընթաց պատարագէն ալ տեսանք, ճշգիւ պատարագի Նախերգանին ընթացից կը Հետեւի, այս եւ այն մտածութիւնը կը պարունակէ աս խօսքերով. (Յառաջ քան զստեղծումն մարդոյն) mens jam et sensus, sic inter se discreta, finibus suis se continebant, opificisque Verbi majestatem in se ipsis ferebant, taciti laudatores insignis opificii et celebres praecones. Nondum autem utriusque temperatio ulla erat ... alter angelus, mixtus adorator ...

[10] "Ընդ վերնական դասուցն" — Ճառ ԽԵ. (ի Զատիկ.) "Զենցուք Աստուծոյ պատարագ օրՀնութեան ի վերայ վերնոյն սեղանի ընդ վերնական դասուցն." (= μετὰ τῆς ἄνω χοραστασίας.)

[11] "Գեղապարութիւն" չի նշանակեր "գեղեցիկ պարաւորութիւն," ինչպէս Հասարակօրէն կը կարծուի, Հապա "գեղօն" չէ թէ "գեղ" բառէ յառաջ գալով՝ կը նշանակէ χορεία, chorea, պար, գեղաւորաց խաղ: Նոյն բառով թարգմանուած է մեր Ս. Հօր "ի Սկիզբիանոս" ճառին

*Դպիրքն.* Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զաւրութեանց. լի են երկինք եւ երկիր փառաւք քո։

ԿԱՆՈՆ

Գ. — *Քահանայն.* Սուրբ, սուրբ, սուրբ ես Աստուած սրբութեանց[12] որ բնակեալդ ես ի լոյս անմատոյց բարձրեալ եւ հանգուցեալդ ի հրեղէն կառս, երկայնամիտ եւ բազումողորմ Աստուած, անոխակալ եւ անյիշաչար Տէր, որ մարդասիրութեամբ եւ բարեգթութեամբ ստեղծեր զազգս մարդկան, շնորհելով զպատիւ փառազարդութեանն ի դրախտին վայելչութեանն, ինքնիշխանութեամբ տիրելով ի վերայ ամենայնի. հանդերձ դուզնաքեայ պատուիրանատուութեամբ առ ի վեհագոյն փառս զվերադիտումն ունելով ի ձեռն անձնիշխան կամացն անմահութեամբն աստուածանալ։ Այլ վասն զի ի ձեռն աւձապատիր խաբէութեամբ բանսարկուին[13] ոչ իմանալով նախաստեղծին զզուգապատիւ փառազարդութիւնն՝ հաւասարեաց մահուամբ անասնոց անմտից. եւ ախտալից ապականութեանց գտեալ ժառանգորդ, փոխանակ ընդ երջանիկ երանութեանցն եղեալ ողորմելի եւ եղկելի։ Այլ դու, ողորմած Տէր եւ գթած, ոչ յաւիտեան պահեցեր ոխս անտես առնելով զկորուսեալն, այլ առատապէս հոգաբարձութեամբ նախախնամելով զանազան շնորհաւք խրատեալ արգահատեցեր, բարկութեամբ, հարուածովք[14], ողորմութեամբ, աւրէնսդրութեամբ, սուրբ հարցն աւետարանութեամբ, հրեշտակաց մերձակացութեամբ, մարգարէիցն քարոզութեամբ, եւ ամենայն նշանաւք եւ արուեստիւք յորդորելով զմարդիկան[15] (զմարդկային) բնութիւնս առ ի հանդէս

Գ. ‖[59] L չունի հոս “Քահանայն„ խորագիրն, եւ տողօթքը (Գ) կցած է նախընթացին ծայրին՝ իբր թէ շարունակութիւն ըլլար Դպրաց “Սուրբ, սուրբ„ եւն բաժնին։ ‖[61] Lի ընդօրինակութիւնը՝ “անոխաղալ„ (փխ. “անոխակալ„,) ‖[72] L հոգեբարձութեամբ։ ‖[76] L այսպէս՝ “զմարդիկան„ (փխ. “զմարդկային„

մէջ հին թարգմանիչէն՝ “Ուր զուարճացելոցն ամենեցուն է բնակութիւն եւ պարզաց զանազան գեղապարութիւն։„

12 “Աստուած սրբութեանց„ — Sanctorum, ոչ իբրեւ սեռական՝ τοῦ Sancti, հապա τοῦ Sancta, դժուարաւ կը համարիմ որ բնագիրն եղած ըլլայ՝ ἁγιασμῶν, sanctificationum.

13 “Օձապատիր խաբէութեամբ բանսարկուին.„ — մեր թարգմանչին հանճարոյն վերաբերեալ բարդութիւն՝ անկախ ի յունականէն, որն որ գրեթէ պիտ'որ ըլլայ “խաբելով բանսարկուին ի ձեռն օձին.„ առ բարդութեան ձեւերուն մասնագիր կ'ըլլանք, վասն զի օգտակար են ուրիշ տեղ ալ մեր թարգմանիչին իբրեւ մի եւ նոյն անձը ճանչնալու։

14 “Խրատեալ . . . հարուածովք.„ — Խբ. ճառը՝ որն որ, ինչպէս շատ անգամ ըսինք, պատարագի Նախերգանին եւ բուն Կանոնին վրայ կը ծաւալի, դեռ մաս մ'ունէր զորն որ նախընթաց պատարագին մէջ չտեսանք. հոս նոյնը կը տեսնենք, այս ինքն զմարդկային ազգը “խրատել„ “բարկութեամբ եւ հարուածովք.„ որոնցմէ ետքը “ողորմութիւն„ կը յաջորդէ։ Հմն գլ. 8. կ'ըսէ Ս. Հայրը. Multis autem prius modis . . . castigatus . . . comminationibus, plagis, aquis, incendiis, bellis, victoriis, cladibus, signis e coelo . . . quae omnia eo tendebant, ut malitia contereretur.

15 “Զմարդիկան (= զմարդկային) բնութիւնս„ ըստ Լուգդ. մատենին. կրնար “զմարդկան„ ալ ուղղուիլ։

բարեպաշտութեանն։ Իսկ յորժամ ոչ բաւականացաւ[16] այսուքիկ առ ի փրկութիւն մեզ, այլ տակաւին եւս ի խաւար եւ ի ստուերս մահու պարփակեալ[17] անյուսաբար, ի կատարել լման ժամանակին ծագեցար արեգակն արդարութեան[18] յանարատ Կուսէն[19] հալածելով զխաւար մեղացն. եւ լուսաւորելով զըստ պատկերի քո եղեալ ստեղծուածն, Միածին Որդի եւ Բանդ Աստուած՝ անճառելւոյ Հաւր ծնունդ եւ ճշմարիտ[20] սուրբ Հոգւոյդ փառակից, անսկիզբն եւ անժամանակ, կամաւ եղեալ ընդ ժամանակաւ եւ սկզբնաւորեալ ըստ մերոյին բնութեանս, յանձն իւր կրեաց զամենայն կիրս մարդկային կենցաղոյս առանց մեղաց, բացայայտելով զզաւրութիւնն աստուածութեանդ առ ամենեսեան, հրաշագործող բժշկականութեամբ, իշխանական վարդապետութեամբ, եւ ամենայորդոր կամաւորութեամբ եկեալ ի փրկական չարչարանսն եւ ի մահ կենսատու խաչին բաղձանաւք՝ ցանկացեալ յերեկորին[21] լման ժամանակին, լուցուցանելով զըստ հնոյն, եւ սկզբնաւորեալ նոր ուխտ եւ զէն անհերքելի[22] զխորհրդականութիւնս զայս զյաղթանակս.[23] եւ առեալ զհացն յաստուածային, յամենազաւր, եւ յամենասուրբ, յարարչագործ ձեռսն՝ աւրհնեաց գոհացաւ, եբեկ եւ ետ իւրոց սուրբ եւ ընտրեալ աշակերտացն՝ ասելով. — վերաձայնէ. —

ՍՐԲԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Առէք կերայք ի սմանէ ամենեքեան. այս է մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։

---

կամ "զմարդկան„ ։) ‖77 L առ ի փրկութիւնն մեզ ։ ‖78 L "պար՝ փակեալ„ ։ ‖80 L արդարութեանն ։ — "Կուսէն„ բառը՝ լուսանցքի վրայ աւելցուած՝ "Մարիամայ Աստուածածնէն ։„ ‖82 L "անճառելւոյ Հօր ծըննունդ եւ ճըշմարիտ„ եւն ։ ‖86 L հրաշագործօղ ։ ‖88 L լըրման ։ ‖89 L "զըստ հընոյն ... եւ զէնան

16 "Բաւականացաւ„ — գուցէ յունականին ձեւով, փոխանակ ըսելու "բաւականացան։„

17 "Պար՝ փակեալ„ — տանկ Լ ձեռագ. մատենին մէջ. կրնայ "կայր փակեալ„ եղած ըլլալ. ինչպէս որ ալ ըլլայ՝ խօսքը դիմաւոր բայ մը կը պահանջէ։

18 "Արեգակն արդարութեան.„ նոյն Խէ։ Ճառին գլ. 13. գրեթէ գործածուած առնուած "արեգակն արդարութեան.„ (տես. Migne, սիւն 641, տող 10։)

19 "Յանարատ Կուսէն„ բառերէն ետքը Լ ձեռագ. մատենին մէջ լուսանցքը կ'աւելցուի կարմրագեղով՝ "Մարիամայ Աստուածածնէն.„ գրիչը նոյն է։

20 "Ճշմարիտ սուրբ„ — տես վերը՝ էջ 257, ծան. 4։

21 "Յերեկորին.„ — Ճառ. Խէ. գլ. 16. Illi quidem lugeant, nos autem agnum comedamus; ad vesperam quidem (Ելից, ԺԲ. 18), quoniam in saeculorum fine Christi passio contigit; siquidem vespere quandoque, peccati videlicet caliginem discutiens, discipulis Sacramentum impertitur.

22 "Անհերքելի„ — տես նախընթաց Ա (Երկրորդ) պատարագին մէջ նոյն բացատրութիւնը, էջ 229. ծան. 31։ Ճառ. Խէ. գլ. 16. σταυροῦ τρόπαιον τὸ ἀήττητον — insuperabile crucis signum.

23 "Յաղթանակ„ բառին յունարէնը ἐπινίκιον = յաղթողական, յաղթական, յաղթանակ (իբր ածական, օրինակի աղագաւ ի Շարականս "յաղթանակ համբերութեամբ„ կամ "յաղթանակ մարտ„ ըսուածին պէս։) Ճառ. ԻԳ. (Վան խաղաղ. Գ.) գլ. 13. կ'ըսուի՝ Utinam... fiat dies, non contradictionis sed latitudinis; non tentationis monumentum, sed triumphale festum.

*Ըստ նմին աւրինակի եւ զբաժակն առեալ, աւրհնեաց, գոհացաւ, ետ իւրոց ընտրեալ եւ բազմեալ աշակերտացն՝ ասելով:*

*Առէք արբէք ի սմանէ. այս է արիւն իմ Նորոյ ուխտիս, որ յաղագս ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց:*

*Դ. — Վասն որոյ ի վերայ այսոցիկ յաւետապարգեւեալ՝ առ ի յիշումն աւրհնողիդ եւ ի փրկութիւն մեզ միշտ մատուցանեմք զահաւոր եւ զսոսկալի խորհուրդս՝*[24] *տարածեալ կամաւորապէս զանարատ բազուկսն ի վերայ խաչին եւ անքակ*[25] *միաւորութեամբ աստուածային եւ մարդկային բնութեամբն*[26] *աղերսացուցեալ ի կողէն զկենդանութիւնն, եւ ճշմարիտ մահուամբ իջեալ ի ստորին կողմն երկրի լուծանելով զզաւրութիւն մահու, հոգւով առ ի հոգւոցն դժոխապետութիւն, եւ մարմնով առ ի մարմնապահեստ վայրս ապականութեան, որով ստուգապէս ծանուցեալ կենդանեաց եւ մեռելոց զամենազաւր միայն զահաւոր աստուածութիւնդ քո:*

*Յիշելով այսուհետեւ եւ մեք զՄիածնիդ քո որ վասն մեր զփրկագործ զչարչարանսն, զկենդանատու զխաչելութիւնն, զերեքաւրեայ զթաղումն, զերանելի յարութիւնն, զաստուածապէս համբարձումն յերկինս եւ զնստելն ընդ աջմէ քո, Հայր. — ի ձայն. — զահաւոր եւ զփառաւորեալ գալուստ դորա պատմեմք:*

*Դպիրքն. Յամենայնի աւրհնեալ ես, Տէր. աւրհն.:*

*Ե. — [Քահանայն.] Քեզ միայն, մարդասէր եւ բազումողորմ Աստուած, վայելէ վերառաքել գոհութեամբ զփառատրութիւն ի վերայ անչափ մարդասիրութեանդ՝ զոր ցուցեր առ ազգս մարդկան ի սկզբանէ մինչեւ ի կատարումն ժամանակաց, որ եւ այսպիսի անպատում եւ ահաւոր խորհրդոյ կարգեցեր սպասաւորս, ոչ յաղագս մերոյ ինչ արդարութեան եւ բարի կենցաղավարութեան, ուստի ամայիք միշտ եւ թափուր՝ ունայնանամք ի բարեաց. այլ ի ձեռն քո առատապարգեւ բարեգթութեանդ ողորմեալ մեզ երկայնմտելով՝ ներես մերձենալ ի սպասաւորութիւն մարմնոյ եւ արեան Միածնիդ քո:*

---

հերթեկի, եւն: ‖96 L ի քաւութիւնն եւ ի թողութիւնն: ‖97 L օրհնեաց † եւն: ‖99 L արիւնն իմ:

Դ. ‖102 L "... օրհնողիդ եւ ի փրկութիւնն մեզ," եւն: ‖105 L աղերսացուցեալ: ‖106 L կողմ: ‖107 L "առ ի հոգւոցըն դըժոխապետութիւնն," եւն: ‖112 "զնստելդ ընդ աջմէ քո," եւն: ‖113 L դորայ: ‖114 Հռո եւ այլուր Զեռ. պարզ՝ "Դպ.:"

Ե. ‖115 L բազումողորմն: ‖116 L վեր առաքել: ‖117 ի սկըզբանէ: ‖119 L կենցաղավարութեանն: ‖120 L ի սպասաւորութիւնն: ‖133–4 L առ ի

24 "խորհուրդս՝ տարածեալ." — գոնէ բառ մը, մանաւանդ մը՝ եթէ ոչ կամ որոյ՝ հոն ինկած կ'երեւայ:

25 "Անքակ միաւորութեամբ," — ասես առ նշանաւոր պարբերութեան վրայ վերերը:

26 "Բնութեամբն," — համաձայնած՝ չէ թէ միայն հոլովով, հապա նաեւ թուով, եթէ + գիրն անհոգութեամբ ինկած կամ գիտմամբ վերցուած չէ. Թէպէտ ասանկ ալ արդէն յոգնակի իմաստ ունի: Հմմտ. *Αἷμα καὶ ὕδωρ τῆς πλευρᾶς χεόμενον· τὸ μὲν εἰς ἀνθρώπου, τὸ δὲ εἰς ὑπὲρ ἄνθρωπον.* Լտ. Sanguis et aqua ex latere profluentes, alterum ut hominis, alterum ut humana conditione majoris.

*Սարկաւագն.* Աստուծոյ երկրպագեսցուք:

*Դպիրքն.* Առաջի քո, Տէր:

## ԿՈՉՈՒՄՆ

*Քահանայն.* Արդ անկեալ երկիր պագանեմք եւ մաղթանաւք հայցեմք ի քէն, Տէր, մարդասէր Տէր, որպէս զի առաքեսցես զնորոգող Հոգիդ քո սուրբ ի մեզ † եւ յառաջի եդեալ ընծայս յայս † — կնքէ խաչիւ — որով զհացս աւրհնեալ մարմին ստուգապէս արասցես Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Եւ զգինիս աւրհնեալ արիւն ստուգապէս արասցես Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Ամէն:

*Քահանայն երկրպագէ եւ համբուրէ զսեղանն սուրբ.* Որպէս զի անմեկնելի մնասցէ ի մեզ ամենազաւր շնորհք Հոգւոյդ սրբոյ առ ի յաւգնականութիւն եւ ի պահպանութիւն անձանց մերոց. որպէս զի միշտ արժանապէս վայելելով յահաւոր եւ ի սոսկալի խորհրդոյս՝ կացցուք ի հաւատս, ի յոյս եւ ի սէր ամենայն հաւատացեալքս ի քեզ միակամութեամբ եւ անքակութեամբ սիրոյ արժանացեալք յիշատակի[27] սրբոց՝ որ հաճոյացան առաջի քոյոյ տէրութեանդ:

Որպէս զի հանգուսցես զնոսա անմահ զենմամբս յանմահական ի կեանսդ[28] ըստ իւրաքանչիւր պարգեւաբաշխութեան լրման՝ սուրբ զհարսն, զհայրապետսն, զառաքեալս, զմարգարէս, զվկայեալս, զեպիսկոպոսունս, զերիցունս, զսարկաւագունս եւ զընաւ ուխտ եկեղեցւոյ քում սրբոյ, եւ զամենեսեան յիւրաքանչիւր կարգէ զարս եւ զկանայս հաւատով վախճանեալս: — *Ի ձայն.* — Ընդ որս եւ մեզ այց արասցես, բարերար Տէր աղաչեմք:

*Ժողովուրդն.* Յիշեա,[29] Տէր եւ ող.:

(Աստուածածնին[30] սրբոյ Կուսին Մարիամու եւ Յովհաննու Մկրտչին, սրբոյն Ստեփանոսի նախավկային եւ ամենայն սրբոցն եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս:)

---

յաւգնականութիւնն եւ ի պահպանութիւնն: ||[134] L արժանաւորապէս: ||[137] L արժանացեալք է յիշատակի սրբոց: ||[139] L յանմահականի կեանսդ: ||[140] L "ըստ իւրաքանչիւր պարգեւաբաշխութեանն լրմանց" եւն: ||[141] Ընդօրինակութիւն ունի՝ "զամգարէս (փխ. "զմարգարէս.")... զեպիսկոպոսունս" եւն: ||[142] L զամենեսեան: ||[147] "Ստեփաննոսի:" — Փակագիծն ի հարկէ չկայ ձե-

[27] "Ի յիշատակի." — ստուգիւ աւելորդ գրուած է առաջին ի գիրը:

[28] "Հանգուսցես ... ի կեանսդ" — աս նշանաւոր տեղւոյս վրայ՝ տես յետոյ:

[29] "Յիշեա, Տէր, եւ ողորմեա." — այս ինքն՝ Յիշէ քու Սուրբերդ եւ ողորմէ մեզի:

[30] "Աստուածածնին սրբոյ Կուսին Մար." — ապահովութիւն չկայ՝ հիմնականն մեր գործածած պատարագին Նորագոյն մասերէն, ի ձեռն ժողովոցի պատարագացն, հօս բերուած չըլլալուն: Ասոր ծայրը նոյն ժողովոցը կ'աւելցնէ. "Սարկաւագն ըԱստուծոյ ասասցէ, զի սրբոյ Հօր աղաւթել է (այս ինքն [illegible]), որ է գրած յԱթանասի" (այս ինքն Հայոց Հասարակ գործածած պատարագին մէջ՝ որն որ նոյն մասերին մէջ ամենէն առաջ գրուած է): Իսկ լու-

*Սարկաւագն զԱռաքելոցն ասասցէ, զի սրբոյ Հաւրս արարեալ է որ է գրած յԱթանասի:*

‖ *Քահանայն.*[31] *Ընդունեա, Տէր, եւ զպսակ տարւոյ քաղցրութեամբ քո եւ զաւրս բարեխաւսն եւ զպտուղս երկրի հանապազ: Պահեա, Տէր, եւ զհաւատացեալ ժողովուրդս քո յամենայն նեղութենէ եւ ի փորձութեանց դիւականաց եւ ի մարդոց չարաց եւ յանհանդուրժելի որոգայթից, եւ ի գիշերական եւ ի գիճական*[32] *խորհրդոց. եւ տուր մեզ բարւոք եւ երանելի վարուք եւ բարի գործովք մտանել ի սրբութիւն սրբոց քոց՝ զուարճանալ եւ*

---

ռագրին մէջ: ‖151 "Քահանայն" բառին դիմաց լուսանցքի վրայ գրուած է՝ "Իփնոտփոտ է:" — L տարոյ: ‖152 L ալ "զաւզս:" ‖155 L բարիոք: ‖156 L

ռանցքը, չ'որոշուիր թէ նոյն գրչով թէ օտարով, գրուած է "Իփնոտփոտ է:" Կարծեմ շատ կարեւորութիւն տալու ակնարկութիւններ չեն:

[31] Հոս երկու բան առջի բերան աչքի կը զարնէ՝ ընդմիջարկութեան (interpolation) կասկած տալով: Նախ. Յիշելեաց սովորական կարգէն դուրս անմիջապէս սկիզբը գրուած անանկ խօսքեր՝ որոնք իրենց տեղը ունին ետքէն Յիշելեաց կարգին մէջ: Երկրորդ՝ անակնկալ խնդիրք մը "գիճական" խորհուրդներէ պահպանուելու. այս աստիճան մասնաւորութեան իջած, այսպիսի նիւթ մը՝ անուամբ, եւ ան ալ՝ անմիջապէս հայցուածոց սկիզբը:

Սակայն ամենայն ինչ շատ աղէկ կեցած է իր տեղը: Չէ թէ միայն ընդմիջարկութիւն (interpolation) չկայ հոս, հապա բոլորովին նոյն իսկ մեր Ս. Հօրը ձայնը կը լսենք հոն:

Մեր պատարագներէն երեքը մէկէն կը միաբանին՝ սովորական Յիշեայներէն առաջ՝ մասնաւոր կարճ Յիշեայներ ունենալու, որոնք մասնաւորապէս՝ գրութեան միջոցին (մեզի ծանօթ կամ անծանօթ) պատահած դէպքերուն հետ կապակցութիւն ունին: Մեր աս Գ. պատարագին մէջինը, ինչպէս յաջորդ Ե պատարագինը, եւ ինչպէս որ պիտ'որ ցուցընենք, նախնաբար նաեւ Զ պատարագինը՝ այսպիսի մասնաւոր իբր pro tempore Յիշելիքներ են:

[32] Իսկ երկրորդն "ի գիճական խորհրդոց" — զմեզ Գրիգորի չէ թէ միայն գրոցը, ինչպէս ցայս վայր տեսանք, հապա իրեն բոլորովին ներքին կեանքին միջամուխ կ'ընէ: Ան մարդը — որմէ գեղեցիկ, որմէ խորունկ ոչ ոք կուսութեան գովեստը խօսած եւ գրած է, եւ անոր անբիծ պահպանութեան՝ ի մասնաւորի "աչաց եւ ականջաց կուսութեան" կանոններն աւանդած եւ շատ զգուշութեամբ պահած, ինք ի մատաղ հասակէ ուխտիւ առ այն ինք զինք որոշած ալ ըլլալով, — մարմնոյ խայթոցը կը զգար եւ շատ կը նեղուէր, ինչպէս ինք սաէպ հեծելով կ'ըսէ: "Սոսկալի զարմանալի է — կը խորհրդածեն իրեն գրուածներէն իրեն վարքը գրող Մաւրինեանք (գլ. ՃՀ), — զարմանալի է որ ծանր ծանր նեղութեամբք եւ վշտօք, ծերութեամբ լմնցած, հիւանդութիւն վրան ունեցող, անապատը կենալով, մարմինը շարունակ պահօք եւ աղօթութեամբ սանձելով, տկարացած ըլլայ անմաքրութեան հոգւոյն դէմ կռուելու. սակայն հարկ է որ իրեն հաւատանք, երբ որ կրկին կրկին հառաչելով ինք կը խոստովանի (Ճառ Վասն տառապանաց իմոց.) "Աստուծոյ զօրութեամբ կը մոլեգնի մարմինս — կ'ըսէ, — եւ պատերազմէ չի դադրիր... Անոր համար ոգւոյ եւ թանկոյ մէջ կ'ապրիմ, եւ ան երկնաւոր թագաւորին՝ որն որ ամէն բանի կը տիրէ, կը պաղատիմ որ մարմնոյ եւ հոգւոյ վէճը կարէ եւ պատերազմը զոպէ:" Աս պատերազմին ելքէն վախ ունենալով, չէ թէ միայն սիրոյ հեծեծանօք զՔրիստոս կը թախանձէր որ մրրիկն իջեցընէ եւ թշնամին մերժէ, հապա "վտանգաւոր ալիքներէն վախնալով՝ արօրայնի նիգեր կը գնեմ, սիրոս տրտմութեամբ կը զգածեմ, յորդ արցունք կը թափեմ, մշտնջենաւոր թագաւորին տխրացած ծնկունքներս կը կրկնեմ:" Այսպէս երանելի ծերունին:

— Որո՞նք են ի մասնաւորի հոն յիշուած "մարդք չարք, եւ անհանդուրժելի որոգայթք." ո՞վ կրնայ որոշել կամ որոշ անուանել. փոքր չէր ասոնց թիւը Գրիգորի համար: Մաքսիմոս Շնական — որն որ Աղեքսանդրիայէն փիլիսոփայական հագուստով եկած, սուրբ ձեւանալով իրեն բարեկամութիւնը շահած էր, մինչեւ մասնաւոր ճառով մը Գրիգոր անոր գովեստը խօսած է, ամբոխ հանելով՝ կուսակիցներ առնելով՝ գաղտագողի եպիսկոպոս ձեռնադրուելով, Կ. Պոլսոյ աթոռը գրաւելու ելաւ՝ զԳրիգոր անկէ վանելու ջանալով:

ցնծալ հոգեւորական խնդութեամբ եւ միաբան մատուցանել գոհութիւն եւ խոստովանութիւն եւ երկրպագութիւն քեզ, Հայր, եւ Միածնի Որդւոյ քո եւ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ։ ‖ — Ի ձայն — Եւ առաւել զեպիսկոպոսն մեր՝ զոր շնորհեցեր եկեղեցւոյ քում սրբոյ։

[Սարկաւագն[33] զԳոհութիւնն ասասցէ, եւ քահանայն աղաւթէ.]

## ՅԻՇԱՏԱԿՔ

Յիշեա,[34] Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զընդհանուր սուրբ եկեղեցի փրկեալ պատուական արեամբ Միածնիդ քո, յիշելով զուխտ յիշեցելոց սրբոցն, զաղաչանս երկնաւոր դասուն, պահեա զսա անսասանելի եւ անդրդուելի հանդերձ որդւովք իւրովք, եւ շնորհեա զերկնային զխաղաղութիւնդ։

Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա՝ որք հաւատով պտղաբերեցին ի սուրբ եկեղեցի քո, եւ որք զթասիրաբար եւ զուարթառատ սրտիւ առնեն զողորմութիւն կարաւտելոց. առատացուսցես նոցա փոխատրութեամբ զերկնից արքայութիւնդ քո։[35]

Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զամենայն հաւատացեալքս, որք ուղիղ դաւանութեամբ երկրպագեն սրբոյ Երրորդութեանդ. եւ պարգեւեա իւրաքանչիւրոց զբարեկարգութեանց զյորդորմունս. քահանայապետից՝ ուղղափառ վարդապետութեամբ զնմանակերպութիւն Միածնիդ քո. քահանայից եւ սարկաւագաց նմանապէս սրբազանութեամբ շնորհաբաշխութիւն. ճգնաւորաց՝ ժուժկալութիւն. թագաւորաց ընդդէմ բարբարոսաց զյաղթութեանն շնորհս. իշխանաց եւ զաւրավարաց՝ զնոյն քաջութիւն. հաւատացեալ ժողովրդոց՝ խոնհականութեամբ բարեկարգութիւն. անհաւատից եւ հերձուածողաց՝ զզղջումն եւ դարձ ապաշխարութեան անբիծս.[36] որբոց եւ այրեաց՝ այցելութիւն. տնանկաց եւ տառապելոց՝ ապաւինութիւն. տարակուսելոց՝ յոյս. աշխատելոց՝ հանգիստ. եւ ամենայն տխրելոց եւ նեղելոց՝ ապաւէն եւ աւգնական։

---

ի սրբութիւնն։ ‖[157] L "հոգեւորական անխնդութեամբ.„ գոնէ ընդօրինակութեան՝ համեմատ։ — L "գոհութիւնն եւ խոստովանութիւնն եւ երկրպագութիւնն։„ ‖[161] Փակագիծն ի հարկէ ձեռագրին մէջ չկայ, ինչպէս նաեւ նախընթաց աղօթքին սկիզբն եւ վերջը եղած սա ‖ նշանը։ ‖[163] L զընթանուր։ ‖[164] Ընդօրինակութիւնն ունի՝ "զաղանչս„ (փխ. "զաղաչանս։„) ‖[169] L զողորմութիւնն։ ‖[175—181] L շնորհաբաշխութիւնն ... ժուժկալութիւնն ... քաջութիւնն ... բարեկարգութիւնն ... այցելութիւնն ... ապաւինութիւնն։

[33] "Սարկաւագն„ եւն. մեր հիմակուան Սարկաւագին բոլորները՝ զորոնք մեր Հաւաքիչը կը յիշեցնէ։

[34] "Յիշեա, Տէր, եւ ողորմեա։„ — Բուն աս պատարագի հարցման՝ անմիջական շարունակութիւնը՝ "Ընդ որս„էն եւ անոր պատասխաններէն ետքը կը սկսի աս Յիշեաներով։

[35] "Զերկնից արքայութիւնդ քո։„ — Համմ. Ճառ. Խ. (Կ. պոլ. 381բն) ի սուրբ Մկրտ. Deum sese cuique pro puritatis ratione spectandum cognoscendumque praebentem, id quod regnum quoque coelorum appellamus.

[36] "Անբիծս„ — չ'երեւար որ վրիպակ մ'ըլլայ, եւ կամ պակաս բան մը հոս. կրնայ նշանակել "առանց առաջանաց,„ կամ "անկեղծ։„

Ողորմեա, Տէր, ի վերայ այսոցիկ, եւ փրկեա զամենեսեան զաւրութեամբ սուրբ խաչին, եւ պահպանութեամբ հրեշտակաց, յամենայն փորձութեանց եւ վտանգից, ի հրկիզութենէ, ի ջրահեղձութենէ, ի սառնամանեաց, յաւազակաց, ի սողնոց, ի գազանաց, յայսահարութենէ, ի վտանգէ եւ յամենայն որոգայթից բանսարկուին, եւ ի զանազան ցաւոց:

Ողորմեա, Տէր, ի վերայ հոգւոցն հանգուցելոց՝ որք հաւատով յանուն քո ննջեցին. շնորհեա նոցա մարդասիրապէս թողութիւն յանցանաց, եւ հանգո յանտրտում ի կեանսն:

Այլ ողորմեա, գթած Տէր եւ ողորմած, ի վերայ բանաւոր հաւտի քո՝ զորս ըստ պատկերի քում ստեղծեր, հովուել ընդ քաջ հովուապետութեամբ. զանարատսն պահելով, զհիւանդացեալսն մեղաւք՝ բժշկելով, զբեկեալսն ողջացուցանելով, զգլորեալսն կանգնելով, զցրուեալսն ժողովելով, մինչեւ տարեալ հասուսցես զամենայնն յամրածածուկ փարախ արքայութեանդ ի վերինդ Երուսաղեմի, ի ժողովս սրբոց, յարքայական հանգիստն, եւ յառագաստն լուսոյ, որք յարազուարճ ուրախութեամբ ուրախացեալք յաւետապարգեւ փառաւք փառաւորեալ՝ անդադար փառաւորեն զմիասնական եւ զփառաւորեալ սուրբ զԵրրորդութիւնդ. — վերաձայնէ քահանայն. — որում միայնոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեան:

(Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսեան †:[37] Սարկ. զԱմենայն սրբովքն աստ ասացէ:)

Զ. — Քահանայն. [38] Գոհանամք զքէն Տէր տէրանց, Աստուած աստուծոց, որ այսպիսի բարութեանց զմեզ հաղորդս արարեր ի ձեռն Միածնիդ շնորհաց ի վեր քան զքերովբէս. վասն զի նոքա սրբասացութեամբ Աստուած եւ Տէր աւրհնաբանեն զքո անունդ, իսկ մեք ի ձեռն վերստին ծննդեան եւ Հոգւոյն սրբոյ որդեգրութեան արժանացեալք ի հայրական խնամոցդ: Վասն որոյ եւ այժմ հայցեմք ի քէն զթողութիւն մեղաց եւ զսրբութիւն հոգւոց եւ մարմնոց մերոց, որպէս զի արժանի լիցուք ըստ բնութեամբ Միածնիդ եւ շնորհիւ մեք — ի ձայն — համարձակաձայն բարբառով Հայր կոչել զքեզ եւ ասել:

||181 L ի սառնամանեաց: ||188—9 L ...թողութիւնն յանցանաց եւ հանգոյ յանդորրում ի կեանսն: ||194 L փարախ: ||202 L "սրբոցն:" փակագիծը ձեռագրի մէջ ի հարկէ չկայ:

Զ. ||205 L զքերովբէս: ||206 L վերստին ծննդեան: ||208 L զթողութիւնն մեղաց: ||214 L արքայութիւնն եւ զօրութիւնն:

37 "Եւ եղիցի ողորմութիւն" եւն. — Հաւաքչէն հոս բերուած՝ հետեւեալ ազդարարութեամբ մէկտեղ:

38 "Գոհանամք զքէն, Տէր տէրանց." — առ զեղչեցին Տէրունական աղօթքին ներածութիւնը մեր Բ եւ Գ պատարագին մէջիններուն իբրեւ թէ մէջանկեալ է՝ երկուքէն ալ մէյմէկ գլխաւոր գաղափար յինքեան միացնելով:

ԱՂՕԹՔ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ

*Ժողովուրդն.* Հայր մեր, որ յերկինս։

*Քահանայն.* Զի քո է արքայութիւն եւ զաւրութիւն եւ փառք յաւիտեանս։ Խաղաղութիւն ընդ ամենեսեան †։

*Սարկաւագն.* Աստուծոյ երկրպագ.։

Է. —Նայեա, Տէր, բարերարութեամբդ քո յերկրպագութիւն ժողովրդեանս, եւ շնորհեա խորհրդականութեամբս այսուիկ զպարգեւս քո առատաբար քոյին քաղցրութեամբդ, աւրհնեա զամենեսեան ըստ իւրաքանչիւր հասակի, եւ հաստատեա ի գործս բարութեան։ — *Ի ձայն.* — եւ արժանաւորեա փառաւորել զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգիդ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։

*Սարկաւագն.* Պռաւսխաւմէն։

*Քահանայն.* Սրբութիւնք սրբոց վայելէն։

*Ժողովուրդն.* Միայն սուրբ, միայն Տէր, միայն Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հաւր. ամէն։

*Քահանայն.* Աւրհնեալ Հայր սուրբ, աւրհնեալ Որդիդ սուրբ, աւրհնեալ Հոգիդ սուրբ։

Աւրհնութիւն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ։

[*Քահանայն.* Ի սուրբ[40] մարմնոյ եւ յարենէ Տեառն մերոյ, եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ, որ իջեալ ի յերկնից բաշխի ի միջի մերում։ Կեանք եւ յարութիւն, քաւութիւն եւ թողութիւն մեղաց։ Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ. սաղմոս ասացէք երկնաւոր։]

*Եւ առեն[41] զամենայնն ըստ սրբոյն Աթանասի. եւ քահանայ[ք]ն հաղորդին եւ բաշխեն ժողովրդեանն։*

ԱՂԱԻԹՔ ՅԵՏՀԱՂՈՐԴԱԿԱՆ

Ը. —*Քահանայն.* Զքէն գոհանամք, Տէր բարերար, եւ քեզ մատուցանեմք զաւրհնութիւն եւ զփառաբանութիւն եւ զերկրպագութիւն, որ ի հաղորդելս մերում յերկնային[42] պարգեւացս այսոցիկ՝ ոչ ըստ մեղաց մերոց դատապարտեցեր զմեզ աստուածային հրովս՝ յոր ոչ իշխեն հայել հրեղինացն դասք, յոր եւ ի հնումն ամանք յանսրբոցն սուտերակերպութեամբ[43] հըր-

Է. ‖223 "Սարկաւագն„ անհրաժեշտ խորագիրը նախ գրուած է ընդօրինակութեան մէջ, յետոյ աւրուած համեմատելով L գաղափարին հետ։ ‖232 L "Կեանք են. յարութիւն„ եւն։

Ը. ‖238 L զօրհնութիւնն եւ զփառաբանութիւնն եւ զերկրպագութիւնն։

39 "Սրբութիւնք սրբոց վայելէն„ — ըստ հին Թարգմանութեան, տես վերը էջ 154։ Տես եւ Մանդակունին՝ վերն էջ 116։

40 "Ի սուրբ մարմնոյ եւ յարենէ.„ — տես վարը Ե. Պարգ. Ծան. 149։

41 "Եւ առեն զամենայնն.„ — աղաւաղութիւն Հաւաքչին։

42 "Յերկնային.„ — Լուգդ. տպ՝ "երկնային։„

43 "Սուտերակերպութեամբ.„ — բառ մը

*կիզեցան։ Այլ գթասիրաբար ներես երկայնմտելով յապաշխարութիւն ի ձեռն Միածնիդ շնորհաց, որ եբարձ զմեղս մեր ի խաչափայտն։ Աղաչեմք եւ խնդրեմք ի քէն, Տէր, շնորհեա զսա մեզ յանդատապարտութիւն եւ ի թողութիւն մեղաց եւ յանախտաժետութիւն հիւանդութեանց եւ տարաժամ մահուց։ Սովաւ զաւրացո զմեզ այսուհետեւ հեռանալ ի չարեաց եւ մերձենալ անբիծ հաւատով ի գործս բարութեան։ Սովաւ զվախճանն մեր կնքեա քո խոստովանութեամբ անդրժելի պահելով յորոգայթից բանսարկուին։ Սովաւ եւ յաւիտենից կենացն հաղորդս զմեզ ընկալ. — ի ձայն. — շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հաւր միանգամայն եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւ.։*

## ԱՂԱԻԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑԻՈՑ

Խ. — *Ի մէջ եկեղեցւոյ ասէ քահանայն զաղաւթս.* *Դարձեալ առաւելապէս գոհանամք զքէն, սուրբ Երրորդութիւն, որ լցուցեր զմեզ անճառելի խորհրդովք սրբութեան քո, Սուրբդ սրբոց եւ ի սուրբս հանգուցեալ, յորմէ մշտահայց լինիմք պարգեւել զերկնային զխաղաղութիւնդ քո ի մարմնական կենցաղումս եւ ժամանել յերկնային սեղանդ, ընդ որ եմուտ ճշմարիտ քահանայապետդ մեր վարագուրեալ մարմնովն*[44] *զոր ընկալեալ ի մէնջ, եւ պատարագեաց քեզ ընդ մեղաց մերոց, եւ մշանջենաւորեալ նստաւ ընդ աջմէ քումմէ. եւ մեզ պարգեւեաց զխորհրդականութիւնս զայս՝ պատճառս փրկութեան եւ կենաց. վասն որոյ փառաւորեմք զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգիդ այժմ.*

*Ժողովուրդն.* Եղիցի անուն Տեառն։

*Քահանայն.* Պատարումն աւր.։

*Եւ աւրհնէ զժողովուրդն, եւ արձակին խաղաղութեամբ ի տունս իւրեանց։ Եւ Քրիստոսի փառք յաւ.։*

---

||242 Լ "գթասիրաբարներես ... յապաշխարութիւնն" եւն։ ||244 Լ յանդատապարտութիւնն։ ||247 Լ անբիծ։
Թ. ||254 Լ սուրբ Երրորդութիւնն, ||254 Լ սրբութեանս քո ... հանգուցեալ։ ||260 Լ պատճառսն։

որն որ մատնեաւոր կերպով Աստուածաբանը կը յիշեցընէ հոս մակբայօրէն իբրեւ σκιωδῶς. Տես Ճառ. Լթ. (in S. Lumina) τὰ νέα καὶ πρόσφατα, τοῖς παλαιοῖς καὶ σκιώδεσι. Ճառ. Խ. ի Մկրտ. σκιογραφῶν τὴν ἀλήθειαν.

44 "Վարագուրեալ մարմնովն." — Ճառ. Լթ. (in S. Lum.) Pro suo erga homines amore, intermedia carne — διὰ μέσης σαρκὸς ὁμιλήσας ἡμῖν ὡς παραπετάσματος.

## Դ.

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԱՐԱԳ

—

### ԱԶԴՈՒՄՆ

*Աս պատարագը ցուցուած է՝ մեր Հայերէն առաւել սիրելութեամբ մը գործածուած, ոչ առանց պատճառաց։*

1. *Նոյն իսկ ի Մանդակունւոյ Յառաջաբանութեամբ մը յարդարուած. ինքնագիր — ա. սկզբնական Քարոզութիւններով, — բ. Աղօթքներով ճոխացած է, իբրեւ "Երախայից" պատարագի մաս, որուն կը յարի բուն "Հաւատացելոց" պատարագը գրեալ ի Ս. Գրիգորէ Նազիանզացւոյ։*

2. *Աս պատարագը կ'երեւայ իրօք ի Ս. Նազիանզացւոյ յարգեալ եւ սիրեալ իբր իր "Նոր Սիոնին" սեպհական պատարագ, այս ինքն Կ. Պոլսոյ պանդխտութեանը բոլորովին յատուկ, Նոր վառարան մը՝ իրեն սիրեցեալ Երրորդութեան քարոզութեան։*

3. *Ասոր համար ոչ յիրաւի եղած է որ Ժ դարէն ետքը կը մոռցուի իրեն խօսքը "Քեզ՝ էն եւ ես եւ էդ Աստուած,՝ անսկիզբն անքննելի երրեակ, միութիւն" աղէկ չիմացուելով միշտ, եւ վերջապէս մէկդի ձգուելով. վասն որոյ զետեղուելու է իր տեղը անշուշտ։ Ահաւասիկ աս՝ սայրաքաղաքիս յիշատակաւը մեզի բաւական ցանկալի եղած պատարագ մը։*

4. *Գրութեան եւ գործածութեան տարւոյն համար՝ կրնանք հաշուել Ս. Վարդապետին Կ. Պոլիս գտնուիլը* 378—381, *ոչ առաջ եւ ոչ ետքը։*

5. *Չենք անանկ բախտաւոր որ աս պատարագին հին ձեռագիր մ'ունենանք. բայց համազօր մ'ունինք, այս ինքն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի Մեկնութիւնը՝ Ժ դարէն, որն որ դեռ ետքի յաւելուածները չունի։ Աս պատարագն ընդօրինակողն է որդին։ Ասիկայ հին Ձեռագրի մը տեղ կ'արժէ լիուլի. այնպէս տպագրուած ալ է։*

6. *Թող ուրիշ գեղեցկութիւնները Խոսրովայ Օրինակին՝ մասնադրութեան արժանի է — ա. Վերակոչման աղօթքը, — բ. Պետրոսի եւ Պօղոսի առաքելոց յիշատակը, — գ. Մասնաւոր Քարոզութիւն մը։*

7. *Կ'արժէր անշուշտ, դեռ Հեղինակը չյայտնուած, Հռոմայ վստահութիւնը աս մեր պատարագին վրայ. վստահ էր, եւ չուզեց որ բնագրին այլայլութիւն ըլլայ։*

8. *Նախընծայիներուն պէս մի միայն չէ ձեռքերնիս՝ առաջիկայ պատարագամատուցիս բնագիրը. շատ բազմաթիւ են Օրինակները։ Սակայն անոր համար յայսմ շատ լաւագոյն վիճակի մէջ չենք գտնուիր։ Տասներեքերորդ դարը չեն անցնիր՝ աս պատարագն, այլեւայլ յաւելուածներով, մեզի ընծայող մատեանք. գոնէ մենք հնագոյն մը չկրցանք դեռ տեսնել եւ ոչ լսել։ Անանկով անոնց ամենէն ալ երիցագոյն կը մնայ Ներսէսի Լամբրոնացւոյն իր գործքին մէջ զետեղածը ԺԲ դարէն, ան ալ, յայտնի է, արդէն յաւելուածներ առած։ Անոր համար աս վերջինը՝ հարկաւ աւելի ձայն մը կ'ունենայ այլեւայլ խնդրոց մէջ ամէն նա-*

*խընթացնելէն աւելի։ Քիչ մնացած է որ ասկէ զրկուէինք. վասն զի ունեցած տպագիրնիս մի միայն Օրինակ է. որովհետեւ Լամբրոնացւոյն Խորհրդածութեանց գրքին շատ Օրինակներ կան, բայց զանց կ՚ընեն հոն ասիկայ յառաջ բերելու։*

*Ուստի պարծեալ մի միայն կը մնայ մեզի ան անխառն Օրինակնիս՝ որն որ վերջին յիշածներնէս երկու դարով հնագոյն բնագիր մը մեզի կու տայ, այսինքն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի Օրինակը (իր «Պատարագի Մեկնութեան» մէջ) ճիշդ 950ին։ «Առաջին գծագրութիւն եղեւ ձեռամբ Սահակայ՝ որդւոյ Տեառն Խոսրովու, սոյն սուրբ գրոցս մեկնչի», ինչպէս նոյն Սահակայ եղբայրը, Գրիգոր Նարեկացի, մասնաւոր Յիշատակարանով մը սոյն գրքին վերջը կը ծանուցանէ։ Առանց ասոր՝ աս գեղեցիկ պատարագին մարմինը դժուարաւ կրնայինք հանել։ Նաեւ եթէ ճարտարէինք ալ անխառն բնագիր մը կազմելու, անբաւ տարակոյսներու մէջ առ խարխափ պիտ՚որ քալէինք։ Աս չքաւորութիւննիս աւելի հիանալի կու գայ, երբ որ մտածենք որ աս պատարագը նախընթացներուն բախտին վիճակակից չէր, որոնք կանուխ մէկդի դրուեցան. հապա մինչեւ գոնէ ԺԱ դար գործածութեան, եւ ըստ մեծի մասին՝ մի միայն գործածութեան մէջ էր։ Ինչո՞ւ Օրինակներ պիտ՚որ չգտնուէին գոնէ մէկ կամ երկու։ Անոր համար ալ՝ այնչափ ասոր նկատմամբ յոյսերնիս կտրած չենք՝ ուրիշ Օրինակ ատենօք երեւան ելած տեսնելու, որչափ որ նախընթացներուն նկատմամբ գրեթէ անյոյս ենք։*

*Խոսրովեան բնագիրը մեր ցայսօր գործածած եւ այնչափ դարերով բազմօք եղանակաւորուած Հասարակ Ընթերցուածը՝ բաւական շատ տեղ իր նախնական գոյնին եւ զօրութեան կը վերածէ։*

*Բայց ասով ալ, ինչպէս պիտ՚որ տեսնենք եւ շօշափենք, չենք ունենար ձեռքերնիս ան ամբողջութիւնն, ըստ ամենայն մասին, ինչպէս որ Ս. Գրիգոր կը գործածէր։ Անձեւացեաց Եպիսկոպոսը մեզի 500 տարի, այսպէս ըսենք, գործածութեամբ՝ տեղ տեղ մաշած բնագիր մը կ՚ընծայէ, որն որ թէպէտ քանի մը մեծագին նշաններ պահած է աս պատարագին ճշմարիտ ծագումը եւ նախընթացներուն հետ ազգակցութիւնը ո՛ր եւ իցէ տարակոյսներէ ազատելու, սակայն հիմամբ կը կասկածուի թէ ամէն նկարագրական նշաններն աս նկատմամբ՝ պահուած չեն. շատ բան ալ ժամանակաց հոլովմամբ մէկդի ինկած գացած է։*

---

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ*

*Յաջորդ Պատարագին հրատարակութեան եւ ձեռագրաց համեմատութեան նկատմամբ պէտք է միտ դնել հետեւեալ կէտերուն։*

*1. Բնագրին հիմն առնուած է* Խոսրովու Անձեւացեաց *եպիսկոպոսի մեկնած Պատարագն՝ քաղելով կէտ առ կէտ անոր Մեկնութեան մէջէն յառաջ բերուած Պատարագի մասերն, որ բոլորովին ամբողջական է։*[1] *Ուր պէտք տեսնուած է շեղել ասկէ՝ համեմատութեանց մէջ դրած ենք Խոսրովայ ընթերցուածն ըստ Վենետկոյ տպագրին՝* C *համառօտութեամբ նշանակելով։*

---

* *Այս ծանօթութիւնը մենք աւելցուցինք: ՀՐՏՐ:*

[1] «Խոսրովու Անձեւացեաց եպիսկոպոսի Մեկնութիւն Աղօթից Պատարագին», Վենետիկ, 1869, 8° էջք 67։ Հրատարակութիւնն եղած է 22Ե (= 1836) թուին գրուած ձեռագրի մը համեմատ։

## Դ.

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԱՐԱԳ

—

### ԱԶԴՈՒՄՆ

*Աս պատարագը ցուցուած է՝ մեր Հայերէն առաւել սիրելութեամբ մը գործածուած, ոչ առանց պատճառաց։*

1\. *Նոյն իսկ ի Մանդակունւոյ Յառաջաբանութեամբ մը յարդարուած. ինքնագիր — ա. սկզբնական Քարոզութիւններով, — բ. Աղօթքներով ձուխացած է, իբրեւ "Երախայից" պատարագի մաս, որուն կը յարի բուն "Հաւատացելոց" պատարագը գրեալ ի Ս. Գրիգորէ Նազիանզացւոյ։*

2\. *Աս պատարագը կ'երեւայ իրօք ի Ս. Նազիանզացւոյ յարգեալ եւ սիրեալ իբր իր "Նոր Սիոնին" սեպհական պատարագ, այս ինքն Կ. Պոլսոյ պանդխտութեանը բոլորովին յատուկ, նոր վառարան մը՝ իրեն սիրեցեալ Երրորդութեան քարոզութեան։*

3\. *Ասոր համար ոչ յիրաւի եղած է որ Ժ դարէն ետքը կը մոռցուի իրեն խօսքը "Քեզ՝ էն եւ ես եւ էդ Աստուած,՝ անսկիզբն անքննելի երրեակ, միութիւն" աղէկ չիմացուելով միշտ, եւ վերջապէս մէկդի ձգուելով. վասն որոյ զետեղուելու է իր տեղն անշուշտ։ Ահաւասիկ աս՝ մայրաքաղաքիս յիշատակաւը մեզի բաւական ցանկալի եղած պատարագ մը։*

4\. *Գրութեան եւ գործածութեան տարւոյն համար՝ կրնանք հաշուել Ս. Վարդապետին Կ. Պոլիս գտնուիլը* 378—381, *ոչ առաջ եւ ոչ ետքը։*

5\. *Չենք անանկ բախտաւոր որ աս պատարագին հին ձեռագիր մ'ունենանք. բայց համազօր մ'ունինք, այս ինքն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի Մեկնութիւնը՝ Ժ դարէն, որն որ դեռ ետքի յաւելուածները չունի։ Աս պատարագն ընդօրինակողն է որդին։ Ասիկայ հին Ձեռագրի մը տեղ կ'արժէ լիուլի. այնպէս տպագրուած ալ է։*

6\. *Թող ուրիշ գեղեցկութիւնները Խոսրովայ Օրինակին՝ մտադրութեան արժանի է — ա. Վերակոչման աղօթքը, — բ. Պետրոսի եւ Պօղոսի առաքելոց յիշատակը, — գ. Մասնաւոր Քարոզութիւն մը։*

7\. *Կ'արժէր անշուշտ, դեռ Հեղինակը չյայտնուած, Հռոմայ վստահութիւնը աս մեր պատարագին վրայ. վստահ էր, եւ չուզեց որ բնագրին այլայլութիւն ըլլայ։*

8\. *Նախընծայիներուն պէս մի միայն չէ ձեռքերնիս՝ առաջիկայ պատարագամատոյցիս բնագիրը. շատ բազմաթիւ են Օրինակները։ Սակայն անոր համար յայսմ շատ լաւագոյն վիճակի մէջ չենք գտնուիր։ Տասուերկերորդ դարը չեն անցնիր՝ աս պատարագն, այլեւայլ յաւելուածներով, մեզի ընծայող մատեանք. գոնէ մենք հնագոյն մը չկրցանք դեռ տեսնել եւ ոչ լսել։ Անանկով անոնց ամենէն ալ երիցագոյն կը մնայ Ներսէսի Լամբրոնացւոյն իր գործքին մէջ զետեղածը ԺԲ դարէն, ան ալ, յայտնի է, արդէն յաւելուածներ առած։ Անոր համար աս վերջինը՝ հարկաւ աւելի ձայն մը կ'ունենայ այլեւայլ խնդրոց մէջ ամէն նա-*

*խընթացնելէն աւելի: Քիչ մնացած է որ ասկէ զրկուէինք. վասն զի ունեցած տպագիրնիս մի միայն Օրինակ է. որովհետեւ Լամբրոնացւոյն Խորհրդածութեանց գրքին շատ Օրինակներ կան, բայց զանց կ'ընեն հոն ասիկայ յառաջ բերելու:*

*Ուստի դարձեալ մի միայն կը մնայ մեզի ան անխառն Օրինակնիս՝ որն որ վերջին յիշածներնէս երկու դարով հնագոյն բնագիր մը մեզի կու տայ, այսինքն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի Օրինակը (իր "Պատարագի Մեկնութեան" մէջ) ծիրչ 950ին: "Առաջին գծագրութիւն եղեւ ձեռամբ Սահակայ՝ որդւոյ Տեառն Խոսրովու, սոյն սուրբ գրոցս մեկնչի," ինչպէս նոյն Սահակայ եղբայրը, Գրիգոր Նարեկացի, մասնաւոր Յիշատակարանով մը սոյն գրքին վերջը կը ծանուցանէ: Առանց սոր՝ աս գեղեցիկ պատարագին մարմինը դժուարաւ կրնայինք հանել: Նաեւ եթէ ճարտարէինք ալ անխառն բնագիր մը կազմելու, անբաւ տարակոյսներու մէջ առ խարխափ պիտ'որ քալէինք: Աս չքաւորութիւննիս աւելի հիանալի կու գայ, երբ որ մտածենք որ աս պատարագը նախընթացներուն բախտին վիճակակից չէր, որոնք կանուխ մէկդի դրուեցան. հապա մինչեւ գոնէ ԺԱ դար գործածութեան, եւ ըստ մեծի մասին՝ մի միայն գործածութեան մէջ էր: Ինչո՞ւ Օրինակներ պիտ'որ չգտնուին գոնէ մէկ կամ երկու: Անոր համար ալ՝ այնչափ ասոր նկատմամբ յոյսերնիս կտրած չենք՝ ուրիշ Օրինակ ատենօք երեւան ելած տեսնելու, որչափ որ նախընթացներուն նկատմամբ գրեթէ անյոյս ենք:*

*Խոսրովեան բնագիրը մեր ցայսօր գործածած եւ այնչափ դարերով բազմօք եղանակաւորուած Հասարակ Ընթերցուածը՝ բաւական շատ տեղ իր նախնական գոյնին եւ զօրութեան կը վերածէ:*

*Բայց սովոր ալ, ինչպէս պիտ'որ տեսնենք եւ շօշափենք, չենք ունենար ձեռքերնիս ան ամբողջութիւնն, ըստ ամենայն մասին, ինչպէս որ Ս. Գրիգոր կը գործածէր: Անձեւացեաց Եպիսկոպոսը մեզի 500 տարի, այսպէս ըսենք, գործածութեամբ՝ տեղ տեղ մաշած բնագիր մը կ'ընծայէ, որն որ թէպէտ քանի մը մեծագին նշաններ պահած է աս պատարագին ճշմարիտ ծագումը եւ նախընթացներուն հետ ազգակցութիւնը ո՛ր եւ իցէ տարակոյսներէ ազատելու, սակայն հիմամբ կը կասկածուի թէ ամէն նկարագրական նշաններն աս նկատմամբ՝ պահուած չեն. շատ բան ալ ժամանակաց հոլովմամբ մէկդի ինկած գացած է:*

---

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ*

*Յաջորդ Պատարագին հրատարակութեան եւ ձեռագրաց համեմատութեան նկատմամբ պէտք է միտ դնել հետեւեալ կէտերուն:*

1. *Բնագրին հիմն առնուած է* Խոսրովու Անձեւացեաց *եպիսկոպոսի մեկնած Պատարագն՝ քաղելով կէտ առ կէտ անոր Մեկնութեան մէջէն յառաջ բերուած Պատարագի մասերն, որ բոլորովին ամբողջական է:*[1] *Ուր պէտք տեսնուած է շեղել ասկէ՝ համեմատութեանց մէջ դրած ենք Խոսրովայ ընթերցուածն ըստ Վենետկոյ տպագրին՝* C *համառօտութեամբ նշանակելով:*

* *Այս ծանօթութիւնը մենք աւելցուցինք:* ՀՐՏՐ:

[1] "Խոսրովու Անձեւացեաց եպիսկոպոսի Մեկնութիւն Աղօթից Պատարագին," Վենետիկ, 1869, 8º էջք 67: Հրատարակութիւնն եղած է ՋՁԵ (= 1836) թուին գրուած ձեռագրի մը համեմատ:

2. *Խոսրովայ մեկնութիւնը կը գտնուի ձեռագիր նաեւ մեր Մատենադարանին մէջ՝ Թ. 282։*[1] *Ասոր ընթերցուածները մի առ մի համեմատուած են եւ տարբերութիւնքը նշանակուած* W (= *Խոսրով Վիեննայի*) *համառօտութեամբ։ Ուր բան մը չենք նշանակեր՝ ըսել է որ ձեռագիրը լիովին կը նոյնանայ տպագրին հետ։ Յաճախ այս դէպքը* CW *համառօտութեամբ կը նշանակենք։*

3. L *կամ Լիոնեան օրինակէն շատ քիչ տեղ ընթերցուածոց տարբերութիւններ յառաջ բերուած են։ Վասն զի՝ թէեւ կայ հոն ալ գրքին սկիզբը՝ "Պատարագամատոյց Աստուծով, զոր արարեալ է սրբոյ Հօրն մերոյ Աթանասի Պատրիարքին Աղեքսանդրու." (տես վերը՝ էջ* 82, § 1.) *բայց այս մեր սովորական Պատարագն է, զոր յետոյ լիակատար կը տեսնենք։ Ուստի եւ հանգուցեալ Հ. Յովս. Վ. Գաթրճեան լուլի չէ օրինակած* L*ի այս Պատարագն, այլ միայն կարեւոր տարբերութիւնները նշանակած։*

4. *Համեմատութեանս մէջ յաճախ կը տեսնուի* N *համառօտութիւնն, որ կը ցուցընէ "Ներսէսի Լամբրոնացւոյ Պատարագի մեկնութեան մէջ գտնուած Խորհրդամատոյցն մի միակ օրինակէ մը։*[2] *Այս Պատարագը շատ կը շեղի (— բաց ի անկէ որ Նախերգան-Պատարագ մ՚ալ ունի, —) նաեւ անով որ բոլորովին տարբեր խրատագրեր ունի ի մասնաւորի Ձեռնադրութեան եւ եպիսկոպոսի հանդիսական Պատարագի համար։ Այս ամէնը հոս ծանօթութեանց մէջ չէ նշանակուած, վասն զի Լամբրոնեան Պատարագը յետոյ առանձինն պիտի տեսնենք։ Ուստի համեմատուած են միայն աղօթքներն եւ այն մասերն՝ որ կան Խոսրովեան Պատարագին մէջ։*

5. *Լամբրոնեան Պատարագին հետ բառ առ բառ նոյն է Մոնաքեան ձեռագրին Աթանասի անուամբ նշխն Պատարագաց երկրորդը։ Վասն զի յիշեալ ձեռագիրը նախ ունի մեր Սովորական Պատարագն Աթանասի անուամբ (տես էջ* 84, § 1.) *յետոյ Լամբրոնեանն՝ նոյնպէս Աթանասի անուամբ. (տես էջ* 85, § 2—3։) *Մենք հոս կը համեմատենք երկրորդը եւ այն բուն Պատարագամատոյցն (անդ,* § 3) *ճիշդ այն չափով եւ այնպէս՝ ինչպէս Լամբրոնեան Պատարագը։*

6. *Ուղղագրութեան մասին կը կրկնենք այն ամէնն՝ զոր ըսինք նախընթաց բնագրաց համար. ուստի մենք միօրինակութեան համար ամէն տեղ ու գրեցինք, մինչ* CWLN *միշտ* օ *կը գրեն եւ միայն* M *ամէն տեղ* ու *ունի՝ մեր գրածին պէս։ Ուստի այս մասին ձեռագրաց մէկ երկու անհաւասարութիւնք եւ պէսպիսութիւնք չենք նշանակեր։ Դարձեալ* M *ձեռագրի հրամայականաց "զաւրացոյ," "կեցոյ," եւն ուղղագրութիւնն ամէն տեղ չենք երկրորդեր իբրեւ ընթերցման տարբերութիւնք։ — Խորագիրք աղօթից, Բաժանմունք (Ա, Բ եւն.) ձեռագրաց մէջ չկան, ինչպէս եւ ոչ ի* C *եւ* N*։*

7. *Կը ցաւինք որ "Աթանասի" Պատարագին Յունարէնը, ձեռքերնիս չունէինք, որպէս զի համեմատելով՝ Հայերէն բնագրին ամէն կէտերու հնութիւնն եւ հարազատութիւնն ըստ այնմ որոշել կամ կշռել կարենայինք։ Յունարէն բնագիրը կայ, եւ այն՝ Հայոյն պէս՝ Աթանասի անուամբ, բայց անտիպ է տակաւին։ Տարակոյս չի կրնար ըլլալ որ այս* Anaphora S. Athanasii *նոյն է Հայերէն*

---

[1] Տես "Ցուցակ Ձեռագրաց" (Թ. 282,) էջ 706—7։

[2] "Սրբոյն Ներսէսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի խորհրդածութիւնք ի կարգս եկեղեցւոյ եւ Մեկնութիւն խորհրդոյ Պատարագին։" Վենետիկ 1847, էջ 193—226. մեր հոս տեղ համեմատածն է՝ էջ 209, տող 17 եւն։

*Պատարագամատոյցին հետ, ինչպէս կը ցուցընէ նաեւ սկզբնաւորութիւնը՝* Domine Deus virtutum (*„Տէր Աստուած զօրութեանց."*)[1] *թէպէտ եւ ասորի ձեռագրի մը մէջ „*[illegible]*" Աղեքսանդրիացւոյ անունը կը կրէ, զոր կ'ուղղէ Սեւերիանի: Ասորի Պատարագաց՝ որոնք թուով իբր* 70 *հատ են, շատերուն խորագիրք ամենեւին հաստատուն կռուան մը չունին. գրեթէ ամէն նշանաւոր սուրբ Հայր Պատարագ մ'ընծայուած է իւր անուամբ: — Եթէ երբեք բախտ ունենանք ասորի բնագիրը տեսնելու, կը փութանք համեմատել նոյնը Հայերէնին հետ. վասն զի այս „Աթանասի" Պատարագը հին է մեր Սովորական նուիրագործութեան, որով կարեւոր է այսպիսի համեմատութիւն մը նաեւ այժմու բնագրին համար:*

[1] Տես J. S. Assemani, Bibliotheca Orientalis, III. pars 1 (Romae 1725), p. 20 ի Ծանօթութեան, ուր կը յիշէ թէ այս Պատարագին վրայ խօսած ըլլայ Corn. Schultinger, Catalogus Liturgiarum, t. III, Nr. 15. Անթիմոսի անունը կը կրէ Պատարագս Վատիկանի ասորի ձեռագրաց Նիտրեան հաւաքման Թ. 3 ձեռագրին մէջ. (տես Ass., B. O. I, 562.) Ասորից Պատարագամատոյցաց մէջ կը յիշէ զայն այլ նաեւ Պիքքէլ գիտնականն իւր ասորի գրականութեան համառօտ Պատմութեան մէջ. (G. Bickell, Conspectus rei Syrorum Literariae. Monasterii 1871, p. 67.) ուր կոչուած կ'ըսէ Ասեմանեայ ուրիշ մէկ գործքն ալ. (Ass., Catalog. Bibl. Vatic., II, 214.) — Խոստովանիմ Մեկնութեան եւ անով այս Պատարագիս Հայերէնին լատիներէն թարգմանութիւնը հայագէտ Ֆէթթէր գիտնականին աշխատութեանց՝ որդէն վերը (էջ 177, Ծան. 1,) յիշած ենք:

# ԲՆԱԳԻՐ ԽՈՍՐՈՎԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԻ

## Ա· ՅԱՌԱՋԱԲԱՆ[1]

*Զկնի Աւետարանին եւ զՀաւատամքն ասելոյ քարոզէ*

*Սարկաւագն. Եւ եւս հաւատով աղաչեսցուք եւ խնդրեսցուք յԱստուծոյ՝ ի Հաւրէ եւ ի Տեառնէ ամենակալէ, ի վերայ ժամու[2] պաշտաման եւ աղաւթից, զի Աստուած արժանի ընդունելութեան[3] արասցէ։ Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց. ընկալցի զխնդրուածս սրտից մերոց. ողորմեսցի ի վերայ մեր։ Աղաւթք մեր եւ խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծի տէրութեան[4] նորա։ Եւ նա տացէ մեզ միաբան[5] հաւատով յարդարութիւն*

Յառաջաբան։ Խոսրովայ քով Աւետարանէն ետքը կը սկսի Պատարագը, մինչդեռ Լամբրոնեանն ամբողջ Նախերգան մ'ունի, (զոր տես իւր տեղը.) որուն մէջ ստնուած կայ նաեւ այս Յառաջաբանն։ ‖[1] W այսպէս ունի խորագիրը՝ ("Մեկնութիւն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի։) Քարոզ զկնի Աւետարանին եւ զՀաւատամքն ասելոյ։" — MN քարոզն այս տարբերութեամբ կը սկսին "Սարկաւագն քարոզէ առ դրան խորանին. Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ Ժողովուրդն Տէր ողորմեա։ [Սարկ.] Եւ եւս հաւատով աղաչեսցուք եւ խնդրեսցուք ի Տեառնէ Աստուծոյ ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, ի ժամուս պաշտաման (W ի ժամու պաշտամանս) եւ աղօթից. զի արժանի ընդունելութեան արասցէ" եւն։ ‖[6–7] N "...ընկալցի զսուրբս եւ զխնդրուածս սրտից մերոց. Թողցէ զյանցանս մեր. ողորմեսցի" եւն։ M չունի Nի ընթերցուածը "զսուրբս", բայց ունի՝ "Թողցէ զյանցանս մեր։" ‖[7–10] W "...մտցեն առաջի մեծութեան նորա... Տէր ամենակալ։ Կեցո եւ ողորմեա մեզ, Տէր։" — M ունի "յամենայն ժամ" առութիւնն ալ, բայց ոչ N, իսկ քիչ մ'ետքը MN "...տացէ

[1] "Յառաջաբան։" Հոս երեք բան մեզի կ'առաջնորդեն առանց վերնագիր մ'ընդունելու։ — Առաջին. նոյն իսկ Մանդակունի մեծ Նուիրագործը՝ որն որ յառաջուան ատեններ, Բարսեղեան պատարագին ատենէն, ջերմեռանդ Հայոց եկեղեցական քարոզութեան՝ եւ նոյն իսկ անկէ կը չինէր իր՝ սուրբ խորհրդոյն մերձենալու ճամբը (ԻԲ.) բայց նոր յառաջաբանիչ մըն էր ուրիշ որբաղան խորհրդոց, այսինքն Նաղիանզ. Գրիգորեաններուն, ինչպէս ժամագրոց եկեղեանը։ Զոյգ մ'աղօթք եւ յառաջաբանական Քարոզութիւն մը կը յարէ Երախայից աղօթքին եւ անոր Քարոզութեանը վրայ։ Յառաջաբան մը յարելով բոլոր Գրիգորեան պատարագներուն՝ անդէն ի եկղեան նոյն պատարագն ունենալը, ինչպէս Նախնական յաճախութիւնը, կը ցուցնէ Փարպեցւոյն քով։ — Երկրորդ. Յովհաննու Կաթողիկոսի եւ Սահակ. Առողկոյ բացայայտ վկայութիւնը՝ որոնք գտնէ Յառաջաբանը Մանդակունեայն կու տան։ — Երրորդ. նոյն իսկ Խոսրովեան Օրինակը Ժ. դարուն կէսէն՝ Յառաջաբան մը Պատարագամատոյցէն բաժնելով, դնելով պայծառ առանց երկու Քարոզութեամբ եւ երկու աղօթիւք ճոխացուած Յառաջաբան մը։

[2] Խոսրովեան Օրինակ — (տպ. Վենետ. 1869, ըստ Ձեռագրին 22Ե կամ 1336ին —) "ժամու պաշտաման," քիչ մը ետքը "ժամուս," ալ կը կարդայ Խոսրով. նոյնպէս Լամբր. ալ։

[3] "Արժանի ընդունելութեան." քիչ մը ետքը "ընդունելութեան արժանի," ալ կը կարդայ Խոսրով։

[4] "Մեծի տէրութեան," այլ Օրինակ "մեծութեան։"

[5] "Միաբան հաւատով." Լամբր. "միաբան գով հաւատով։" Եւ Պարզ. Մարկ. ԺԱ. ἐν μιᾷ πίστει (Դանիէլ Ագաթ., էջ 149։)

վաստակել. զի ողորմութեան զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր Տէրն ամենակալ: Կեցո եւ ողորմեա մեզ, Տէր:[6]

Քահանայն աղաւթէ. Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծ ես ողորմութեամբ, եւ առատ ես պարգեւաւք[7] բարերարութեան: Որ դու քոյին կամաւ[8] համբերեցեր ի ժամուս յայսմիկ չարչարանաց, խաչի եւ մահու յաղագս մեղաց մերոց, եւ պարգեւեցեր առատապէս զպարգեւս[9] Հոգւոյդ սրբոյ երանելի առաքելոցն: Հաղորդս արա զմեզ, Տէր, աղաչեմք զքեզ,[10] աստուածային պարգեւացդ,[11] թողութեան մեղաց, ընդունելութեան Հոգւոյդ սրբոյ. որպէս զի արժանաւորք եղիցուք գոհութեամբ փառաւորել զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգիդ[12] այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:[13]

Խաղաղութիւն ամենեցուն:

Խաղաղութեամբ քով, Քրիստոս Փրկիչ մեր, որ ի վեր է քան զամենայն միտս եւ զբանս, ամրացո զմեզ, եւ աներկիւղս[14] պահեա յամենայն չարէ. հաւասարեցո զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո, որք հոգւով եւ ճշմարտութեամբ քեզ երկիր պագանեն. վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

---

մեզ միաբան մով հաստատով եւ աղաչաւորնեամբ վաստակել ի գործս բարեաց (M վաստակել ՚ի գործս բարեաց), զի զողորմութեան զշնորհսն" ևն: Վերջաւորութիւնն է ի M "...Տէրն ամենակալ, կեցուսցէ եւ ողորմեսցի." N "...Տէր ամենակալ, կեցո եւ ողորմեա:" Ասոր կը կցեն MN Սարկաւագի քարոզութեան մասերն ալ՝ "Զժամ պատարագիս" ևն, "Զհրեշտակ խաղաղութեան" ևն ևն: Տես Լամբրոնեան Պատարագը: ‖11 CW խորագիրը պարզապէս "Աղօթք" կ'ըսեն. MN "Քահանայն ասէ զաղօթս:" ‖11–12 MN եւ նաեւ W "որ մեծ ես ողորմութեամբ եւ առատ պարգեւօք" ևն. (M "բարերարութեան քո:") ‖14 MN "զպարգեւս եւ շնորհս Հոգւոյդ սրբոյ:" ‖15 MN չունին "աղաչեմք զքեզ" բառերն այստեղ: ‖16 N "աստուածային պարգեւացս այսոցիկ." M "աստուածային քո պարգեւացդ եւ թողութեան" ևն: ‖17–18 MN "զի արժանի լիցուք փառաւորել (M խնդալով փառաւորել) զքեզ ընդ Հօր եւ Հոգւոյդ սրբոյ (M սուրբ Հոգւոյդ), այժմ եւ միշտ:" W պակասաւոր է՝ "որպէս զի արժանաւորք եղիցուք զՀայր" ևն. իսկ C վերջաւորութիւնն ամբողջ ունի: Վերջին "Ամէն" կը ցուցընէ որ MN իրաւունք ունին կցելու հոս՝ "Ժողովուրդն. Ամէն: Քահ. Խաղաղութիւն" ևն, որուն կցին Պատասխանիքն ալ ըստ Սովորական Պատարագին: ‖20 MN "խաղաղութեամբ քո:" ‖21 M "աներկիւղ պահեա." N "աներկեղ" ևն: ‖24 Միայն C ունի անյարմարութեամբ՝ "վայելէ." միւս-

[6] "Ողորմեա մեզ, Տէր." այլ Օր. "կեցո եւ ողորմեա:"

[7] Այլ Օ. "առատ պարգեւօք:" — Բիւզ մ'եւսքն "Որ դու (քոյին կամաւ)," իբրեւ "դու—ու՛" այսինքն պարզապէս՝ ու:

[8] "Քոյին կամաւ" — իբրեւ ἑκουσίως.

[9] "Զպարգեւս Հոգւոյդ." Լամբ. "զպարգեւս եւ զշնորհս:" Այնպէս եւ Պարզ. Մարկ. ԻԳ. (Դանիէլ, էջ 170:) — Հաղորդս արա եւ զմեզ" հին Թրգմ.:

[10] "Աղաչեմք զքեզ" չունի Լամբր.:

[11] "Աստուածային պարգեւացդ." — Լամբր. "աստուածային պարգեւացս այսոցիկ:"

[12–13] "Որպէս զի արժանաւորք եղիցուք փառաւորել զՀ. եւ զՈ. եւ զսուրբ Հոգիդ:" Լամբր. "զի արժանի եղիցուք փառաւորել զքեզ ընդ Հօր եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ":

[14] "Աներկիւղս." Լամբր. "աներկեղ:" — "Հաւասարեցո," Հ. Ընթ. "հաւասարեա:"

*Ի մերձիլ սուրբ խորհրդոյն յահագին սեղանն, ասէ*

*Սարկաւագն.* Մի՛ ոք յերեխայից, եւ մի՛ ոք ի թերահաւատից, եւ մի՛ ոք յանապաշխարից մերձ կայցէ կամ հաղորդեսցի։[15]

Կացցուք առաջի[16] սրբոյ սեղանոյս Աստուծոյ ահիւ։[17] Մի՛ խղճիւ գայթակղութեամբ, մի՛ նենգութեամբ խորամանկութեամբ, մի՛ պատրանաւք խաբէութեամբ, մի՛ երկմտութեամբ թերահաւատութեան.[18] այլ ուղիղ վարուք, պարզ մտաւք, միամիտ սրտիւ, կատարեալ հաւատով, լցեալ սիրով, առաւելեալ[19] ամենայն գործովք բարութեանց[20] կացցուք առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ,[21] եւ գտցուք[22] ողորմութիւն յաւուր յայտնութեան ի միւսան-

---

ները (MNW) "փայելէ։" — Հրատարակիչը կը յայտնէ որ Խոսրովայ "Նոր Օրինակը" այս աղօթքին ծայրը կը յաւելու (տպ. էջ 8, ծան. 1.) "Ժողովուրդն ասէ. Ամէն։ Քահանայն ասէ. Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Ժողովուրդն ասէ. Ամէն։ Քահանայն դառնայ առ ժողովուրդն. հրաման տայ երախայիցն ելանել՝ ասելով. Տէր Աստուած օրհնեսցէ զամենեսեան։ Սարկաւագն. Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ։ Եւ ասէ Սրբասացութիւն ըստ խորհրդոյ աւուրն։" Այս յաւելուածն՝ զոր չունի W ձեռագիրն ալ, առնուած է Լամբրոնեան Պատարագէն. (տես նոյնը։) ‖[28] Այսպէս C եւ W. բայց "այլ Օրինակ" (տպ. էջ 12, ծան. 2) ունի՝ "յապաշխարողաց եւ անմաքրից," ըստ MN "յապաշխարողաց եւ յանմաքրից։" Լամբրոնեանք սոսկ սկիզբն ունին ծանօթ քարոզութիւնը. N "Որք երախայքդ էք՝ երթայք." M լաւ եւս՝ "Որք երախայք էք՝ երթայք. երախայք էք՝ երթայք. որ երախայք էք՝ երթայք։" Ասկէ ետքն ալ շատ կը շեղին՝ արդէն նոր յաւելուածներն առած ըլլալով, այսինքն՝ "Մարմին տէրունական" (զոր առած է Խոսրովայ նոր օրինակը մին, տես տպ. էջ 13, ծան. 1.) "Որք զքերովբէից", "Ոչ ոք արժանի է յմերձենալոյս" եւն. (տես տպ. N, էջ 211—12, եւ յետոյ ի կարգին։) ‖[29] MN այսպէս կը սկսին՝ "Եւ եւս հաւատով եւ սրբութեամբ կացցուք առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ, եւ ահիւ. մի՛ խղճիւ" եւն։ ‖[30] M "մի՛ նենգութեամբ եւ խորամանկութեամբ." N "մի՛ նենգութեամբ, խորամանկութեամբ։" ‖[31] MN "մի՛ երկմտութեամբ եւ թերահաւատութեամբ. մի՛ պատրանօք եւ խաբէութեամբ." (վերջին երկու բառս հոս ունի MN եւ ոչ յառաջ։) ‖[33—4] MN "առաւելեալ եւ լի ամենայն գործովք (N գործով) բարութեան, կացցուք յաղօթս առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ (— N չունի "Աստուծոյ" —) եւ գտցուք ողորմութիւն յաւուր յայտնութեան եւ ի միւսանգամ գալստեան Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո." (M "կեցուսցէ եւ ողորմեսցի." եւ

15 "Ցանապաշխարից մերձ կայցէ կամ հաղորդեսցի." — Լամբր. "յապաշխարողաց եւ յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս։"

16 "Կացցուք առաջի։" Լամբրոնացւոյն քով հոս հին բնագիրը փոփոխութիւն կրած է՝ ճիշդ հոն միջանկեալ Բիւզանդեան պատարագէն առնուած յաւելուածներուն համար, սանկ ձեւանալով՝ "Եւ եւս հաւատով եւ սրբութեամբ կացցուք առաջի։"

17 "Աստուծոյ ահիւ." Լամբր. "Աստուծոյ, եւ ահիւ։" — "Խղճիւ գայթակղութեամբ." Լամբր. "խղճիւ եւ գայթակղութեամբ։"

18 "Երկմտութեամբ թերահաւատութեան,." եւ քիչ մը վերը՝ "Եւ մի ոք ի թերահաւատից," — հաւանականաբար ըստ այնմ նշանակութեան՝ զորն որ ան ատեններն երբեմն ունէր սոյն բառը, այսինքն "ի հերձուածողաց։"

19 "Առաւելեալ ամենայն." — Լամբր. "առաւելեալ եւ լի ամենայն," Հ. Ընթ. "լի եւ առաւելեալ ամենայն։"

20 "Գործովք բարութեանց." Լամբր. "գործով բարութեան։" — "Կացցուք առաջի." Լամբր. "կացցուք յաղօթս առաջի։"

21 "Աստուծոյ" չունի Լամբր.։

22 "Գտցուք ողորմութիւն յաւուր." — Հ. Ընթ. "գտցուք ողորմութեան շնորհս յաւուր։"

զամ[23] զալստեան[24] փրկչին մերոյ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո եւ ողորմեաց մեզ ։[25]

## Բ. ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ[26]

*Զոր արարեալ է սրբոյն Աթանասի Աղեքսանդրու Հայրապետի:*

### ԱՌԱՋԱԴՐՈՒԹԻՒՆ

Ա. — *Քահանայն.* Տէր Աստուած զաւրութեանց եւ արարիչ ամենայն լինելութեանց,[27] որ յանէութենէ զնաւս ի ցուցակութիւն ածեալ գոյացուցեր, որ եւ զմեր հողեղէն բնութիւնս[28] պատուեալ մարդասիրապէս,[29] այսպիսի անպատում եւ ահաւոր[30] խորհրդոյ կարգեցեր սպասաւորս։ Դու, Տէր, որում պատարագեմք զպատարագիս[31], ընկալ առ ի մէնջ զառաջադրութիւնս

կը յաւելու՝ “Ժող. Կեցոյ Տէր.„ եւ անկէ ետքն երկար խաղաղականք եւ Պատասխանիք, զորոնք չունի նաեւ N, տես ի կարգին։)

“Պատարագամատոյց զոր արարեալ է„ եւն։ Խորագիրը՝ զոր վերը գրինք, ունի ի Լամբրոնեանց միայն M, իսկ N պարզապէս՝ “Աղօթք Աթանասի։„ Խորքով (C եւ W) միայն “Պատարագամատոյց„ կարդացած է այստեղ իւր օրինակին մէջ։

Ա. ‖40 “Քահանայն„ խորագիրը չէ օրինակած Խորքով (C եւ W), իսկ MN “Քահանայն տարածեալ (M տարածէ) զձեռսն եւ ի ծածուկ ասէ„ (N կը յաւելու՝ “զաղօթս զայս։„) ‖42 MN “որ եւ զմերս հողեղէն բնութիւն„ եւն։

23 “Ցայտնութեան ի միւսանգամ.„ Լամբր. “յայտնութեան եւ ի միւսանգամ։„

24 “Գալստեան փրկչին մերոյ։ Ամենակալ„ եւն։ Լամբր. “գալստեան Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Ամենակալ„ եւն։

25 “Մեզ„ չունի Լամբր.։

26 “Պատարագամատոյց„ նախնական կը համարինք գրուած ու պատարագին գլուխը։ Ուրիշ կերպ չէին անուաներ մեր հիները գրուած պատարագները։ Նշանաւոր է Մանդակունոյն այս խօսքը (Վիեննայի կայս. մատենադրն. Թ. 10, թղ. 140) “Քանզի անձն մարդոյ՝ եկեղեցի կոչեցաւ, միսն՝ պատարագ, միտքն՝ քահանայ, աղօթքն՝ Պատարագամատոյց։„

— Բաւական ուշ ձեւացած է այն կարծիքը Հայոց մէջ թէ “Ս. Աթանասի„ եղած ըլլայ, ինչպէս Ասողկան խօսքէն կ'երեւայ՝ որն որ չէ թէ գրուած տեսածը, հապա լսածը յառաջ կը բերէ դեռ Ժ. դարուն վերջը։ Սակայն յանձն չէ գրով ալ արձանագրուելու. եւ այսպէս շատ Ձեռագիրներ ունինք, յայտնի է՝ ԺԲ դարէն ետքը, այսպէս. “Պատարագամատոյց Աթանասի Աղեքսանդրացւոյ հայրապետի։„ Լամբրոնացի՝ “Աղօթք Աթանասի.„ սակայն անով միայն սա մէկ աղօթքը չ'իմանար, հապա բոլոր հետեւեալներն ալ, ինչպէս Մեկն. Պատարագի., էջ 188 գրածներէն կ'իմացուի, թէպէտ իրօք հոս ոչինչ մեծի Աղեքսանդրացւոյն կը վերաբերի։

27 “Ամենայն լինելութեանց.„ գուցէ աւելի բնոյն համեմատ “լինելութեան,„ ինչպէս Ղազար կարդացած կ'երեւայ, յունարէն բացատրութիւնը միշտ πάσης γενέσεως, ինչպէս Առաք. Սահմանդր. պատարագին մէջ ալ կայ, կամ πάσης κτίσεως.

28 “Զմեր հողեղէն բնութիւնս.„ ոմանք ըրած են “զմերս հողեղէն բնութիւն„ որն որ ստուգիւ լաւագոյն չէ, ըստ ճաշակի, մեր հիմնականէն՝ զորն որ Խորքով ալ ունի։

29 “Պատուեալ մարդասիրապէս„ շատ անգամ տպագրաց մէջ թողուած է, որն որ անտարակոյս նախնական է եւ խօսքին շատ զօրութիւն կը յաւելու։ Ունի Լամբր. ալ, նաեւ Կ. Պոլսոյ 1706ին տպագիրը։

30 “Անպատում եւ ահաւոր.„ Լամբր. “ահաւոր եւ անպատում.„ նոյնպէս Հասարակ ընթերցուածը։

31 “Զպատարագիս.„ Խորքով կ'ուղղէ անորոշ նշանակութեամբ “պատարագումն„ իմանալ յընդհանուրն՝ իբրեւ “գործողութիւն պատարագելոյ.„ սակայն ուրիշ բան չէ բառը՝ բայց եթէ προσφορά, oblatio, աւելի առարկական մտօք, այս ինքն “ընծայուած նուէրները։„

զայս,[32] եւ աւարտեա զսա ի խորհրդականութիւն[33] մարմնոյ եւ արեան Միածնի քոյ։ Դեղ թողութեան մեղաց պարգեւեա ճաշակողացս զհացս զայս եւ զգինիս,[34] շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հաւր[35] ամենակալի, հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ վայելեն փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

*Ժողովուրդն.* Ամէն։[36]

### ՈՂՋՈՅՆ

Բ. — *Քարոզէ սարկաւագն.* Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան։ [Որ[37] ոչ կարող էք հաղորդել, ի միմեանց ուսարուք,[38] եւ առ դրունս աղաւթեցէք։]

---

|[43] MN «այսպիսի ահաւոր եւ անպատում խորհրդոյս» եւն։ ‖[45–6] «Միածնի քո» ունին MN, իսկ Խոսրով (C եւ W միաբան) «Միածնի քոյ։» ‖[48–50] N «ընդ որում Հօր եւ Հոգւոյդ սրբոյ փառք այժմ եւ.» M «ընդ որում քեզ Հաւր եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք իշխանութիւն եւ պատ.։» ‖[51] «Ժողովուրդն. Ամէն» գրուած է հոս ըստ MN, իսկ Խոսրով (C եւ W) չէ օրինակած։

Բ. ‖[53] Խոսրով (C եւ W) միայն «Քարոզ» խորագիրն ունի. M «Սարկաւագն առ դուռն ձայնէ,» N «Սարկաւ. առ դրունսն քարոզէ։» ‖[54–5] Փակագծեալը, զոր ունի Խոսրով (C եւ W «կարօղ») այս ձեւով, Լամբրոնեանք քիչ մ'այլազգ ունին՝ «Որք ոչ կարացին հաղորդել աստուածային խորհրդոյս, եւ առ դուրս են՝ աղօթեսցեն։» Զափազանց երկայն խրատագրով ճոխացած է հոս Լամբրոնեանն (տես տպ. էջ 213—4 եւ ի կարգին), ուր արդէն առնուած է

32 «Զառաջադրութիւնս զայս» իբրեւ յանձնական = proprosita ista, առաջի դրուած իրերը։

33 «Խորհրդականութիւն,» խորհուրդ = *μυστήριον*.

34 «Եւ զգինիս.» աւելի կրնար ընթերցուածը, մանաւանդ ի տպագիրս, «զբաժակս» եղած՝ անշուշտ տեսակ մ'ականջներու այլակերպ մը հընչելով. սակայն ոչ այնչափ իրաւամբք, երբ դեռ այժմ աւրիշ բան չէ՝ բայց եթէ «գինի,» թէպէտ «ի սուրբ սեղանն» ելլելով՝ առած ըլլայ սրբութիւն մը՝ որուն սատուգիւ չի համեմատիր ան չափազանց յարգութիւնը, զորն որ առ միջոցին կ'ընծայեն մեր այլ եղբարք։

35 «Հօր ամենակալի հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ վայելեն փառք.» — Լամբր. «Հօր եւ Հոգւոյդ սրբոյ փառք այժմ եւ.»

36 «Ժող. Ամէն.» այսպէս Լամբր.: Խոսր չունի, եւ ոչ Հասարակ ընթերցուածը։

37 Հոս (այսինքն Բ. եւ Գ. գլուխներուն) կրկին կարգ կցուրդներուն եւ անոնց ծագմանը վրայ տես վարը, եւ էջ 124։

38 «Ի միմեանց ուսարուք» բոլորովին յատուկ կը թուի Խոսրովեան ընթերցուածոյն. չենք գիտեր՝ ինչ ըսենք իմաստին կամ դիտաւորութեան նկատմամբ։ Կիւրեղ Երուսաղէմացի. Խորհրդ. Կոչ. Ընծայութեան՝ *εἶτα βοᾷ ὁ διάκονος˛ ἀλλήλους ἀπολάβετε* (զմիմեանս ընկալարուք) *καὶ ἀλλήλους ἀσπαζώμεθα.* Յակոբայ պատարագը նոյն տեղն ունի *ἀλλήλους ἐπίγνωτε* (զմիմեանս ծաներուք)։ Ինչպէս ըլլայ՝ ըլլայ, երեք ձեւ ունինք առ խօսքին նկատմամբ՝ որուն գաղափարն արդէն Առաք. Սահմդր. Ը. գրքին պատարագին մէջ ալ տեսանք (— *οἱ μὴ δυνάμενοι,* եւ Յակոբայ պատարագին մէջ *μή τις τῶν μὴ δυναμένων ἡμῖν συνδεηθῆναι.* գլ. 16։) Առաջինն՝ ինչպէս հոս՝ Խոսրովայ քով։ Երկրորդը՝ այսպէս «Որ ոչ էք կարող հաղորդել, առ դուրս ելէք եւ աղօթեցէք.» կամ ինչպէս այլուր՝ «Որ ոչ էք կար. հաղ. եւ առ դուրս ելէք, աղօթեցէք։» Երրորդը՝ հասարակ հիմակուան ընթերցուածը։ Ըստ մասին առ վերջինն է եւ ըստ մասին հինը՝ երբ որ Լամբր. կը կարդայ՝ «Որք ոչ կարացին հաղորդել աստուածային խորհրդոյս, եւ առ դուրս են, աղօթեսցեն։»

39 Նախընթացին հետ առ երկու Կցուրդներով կը բովանդակին ահա մեր հին ընծայման նուիրաց կամ վերաբերութեան զուգընթաց հա-

Պատարագ[39] Քրիստոս մատչի ի միջի մերում[40] գառն Աստուծոյ։
Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք. եւ նայեցարուք զգուշութեամբ։
Ժողովուրդն. Առ քեզ, Աստուած։
Սարկաւագն. Ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ աւրհնութեան։

Գ. — Քահանայն. Շնորհք, սէր եւ աստուածային սրբարար զաւրութիւն (Հաւր եւ Որդւոյ եւ) Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսեան։[41]
Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։[42]
Քահանայն.[43] Ի վեր արարէք[44] զմիտս ձեր յաստուածային խորհուրդս։

---

նաեւ "Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ„ տողը։ ‖[56] W գառնն (= N)։ — Միանգամ ընդ միշտ ըսենք որ ամբողջ Պատարագիս մէջ "Քահանայն, Սարկաւագն, Ժողովուրդն„ խորագիրները չկան Խոսրովայ քով (C եւ W), որ սովորաբար իւր Մեկնութեան մէջ անընդհատ կը հիւսէ ամբողջը՝ առանց խորագրի, կամ պարզապէս "Աղօթք„ եւ "Քարոզ„ խորագրերով գլխաւոր բաժանմանց սկիզբը։ — Ամբողջ այս հատուածը նորագունին պէս ունին MN ("Ողջոյն տուք„ էն եւ երկար խորագիրներէն ետքը) "Զգրուեա, զգրուեա, իմաստութեամբ եւ զգուշութեամբ։ Զհաստատամբ (M "զհաստատման„) Ջիէ կալի՛ տաք տաս։ Եւ ֆալին ըրանէ խորանին։ Սարկաւագն. Ահիւ կացցուք, երկիւղիւ (N երկեղիւ) կացցուք, բարւոք կացցուք եւ նայեցարուք (N նայեցուք) զգուշութեամբ։ Ժողով. Առ քեզ Աստուած։ Սարկ. Պատարագս Քրիստոս մատչի գառնն (M գառն) Աստուծոյ։ Ժող. Ողորմութիւն„ եւն։

Գ. ‖[62] W չունի փակագծեալը, ինչպէս կը ծանուցանէ հրատարակիչն ալ (C տպ. էջ 21, ծան. 1) "Հօր եւ Որդւոյ եւ պակասէ ի բազում Օրինակս։„ Ունին C եւ MN. — M եւ Հոգւոյ սրբոյ։ ‖[63] Այսպէս N, (M "եւ հոգւոյ քում.„) իսկ Խոսրով (C եւ W) ալ տեսած է նոյնը, վասն զի Մեկնութեան մէջ այսպէս կ'ըսէ (տպ. էջ 22, տող 13—15) "...ոչ որպէս ի տալն զխաղաղութիւն յաղօթս, զի անդ ասեն՝ Եւ ընդ հոգւոյդ քում, թէ՝ Եւ քում հոգ-

ւոյդ ու ծանր խօսքերը։ Ասոնց վրայ Ցունացմէ չափազանց բառածներ առնելով՝ ծանրաբեռնած ծանրալուր եղած է ի յետին դարս մեր պատարագին ալ մասը։

40 "Ի միջի մերում.„ ամբողջացուցիչ ընթերցուած մը՝ որն որ նոյն իսկ Լամբրոնացւոյն քով արդէն կորսուած է. շատ դիւր կ'առնուանով յաջորդ խօսքը՝ "ի միջի մերում Գառն Աստուծոյ„ որն որ պիտ'որ զննուի։ — Ան դպրաց բերանը դրուած "Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ, Որ էն Աստուած աստ բազմեցաւ„ եւայլն՝ լեզուով, իմաստով, քիչ ճաշակով՝ յետին եւ ինկած ժամանակի յաւելուած է, բայց անանկ որ Լամբրոնացին գիտէ։

41 "Շնորհք, սէր եւ աստուածային„ եւն։ Մեր Բ եւ Գ պատարագներուն մէջ Առաքելական ձեւին հաւատարիմ մնացած է աս օրհնութեան ձեւը՝ որն որ շատ հին ատեններ միայն եպիսկոպոսին սեպհական եղած կ'երեւայ։ Աս պատարագին մէջինը Հաւաքիչը մեր սովորական Հատարակ պատարագին նմանցուցած է՝ որուն մտաբան է նաեւ մեր պատարագինը։ Աս վերջին ձեւին սկզբնաբար աս պատարագներուն յաւնականէն յառաջ գալուն հիմնական տարակոյս մը չեմ կարծեր որ կարող ըլլանք ունենալ։ Հասարակօրէն Խոսրովայ Օրինակներուն մէջ "Հօր եւ Որդւոյ„ պակաս է, բոլորը Հոգւոյն տրուելով. այսպէս մեր Վիեննայի Օրինակն ալ՝ որ բաւական ընտիր է. սակայն Վենետկոյ 1336ին Օրինակը՝ որն որ ընտրելագոյն կ'երեւայ, վերը դրածնուս պէս է։ Լամբր. եւ Հարկ. Ընթրց. նոյնպէս։

42 "Եւ հոգւոյդ քում.„ մանաւորապէս կը խորհրդածէ Խոսր. որ "Եւ ընդ Հոգւոյդ քում„ չէ հոս։

43 "Քահանայն. ի վեր արարէք ...։ Եւ գոհացարուք։„ Հոս քահանայն կ'ըսէ թէ աս Աջուրդը եւ թէ ասոր պատասխանէն ետքինը. թէպէտ հիմայ, նոյն իսկ Լամբրոնացւոյն քով, սարկաւագին բերանն իջած է։ Խոսրովայ խօսքին ընթաց-

*Ժողովուրդն.* Ունիմք առ քեզ Տէր ամենակալ։[45]
*Քահանայն.* Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ։
*Ժողովուրդն.* Արժան եւ իրաւ։

### ՆԱԽԵՐԳԱՆ

Դ. — Արժան է սուրբ աստուածապէս եւ իրաւ՝ ամենայորդոր փութով քեզ, էն եւ ես եւ էդ Աստուած,[46] անսկիզբն եւ անքննելի, երրեակ միութիւն, միշտ

---

ւոյդ. իսկ աստ թէ՝ ի Հոգւոյդ քումս։ ||[64] Ուղիղն է՝ "Ի վեր արարէք" եւն, թէեւ թէ C եւ թէ W կը կարդան՝ "Վեր արարէք", առանց նախդրի։ MN "Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր աստուածային երկինս։"

Դ. ||[69] Այս խորագիր չունի W, իսկ C "Մեկնութիւն Աղօթից՝ զոր առն ...։" Նաեւ Լամբրոնեանք ունին նոյնը՝ "Քահանայն (M ասէ) ի ծածուկ։" ||[70] Լամբրոնեանն (MN) "ամենայորդոր փութով փառաւորել (M մի ու երկրպագելով փառաւորել) զքեզ Հայր ամենակալ, որ քոյին (M քոին) անզննելի եւ արարչակից բանիւդ" եւն, ուստի չունին՝ "էն եւ ես եւ էդ" եւն։

քէն առ կ'իմացուէր որ գետ ան առեն քահանային բերանն էր. (էջ 22, տպ. Վենետ.)։ Այսպէս բոլոր արեւելք, բոլոր արեւմուտք, միշտ. եւ ոչ այլազգ մեր հինները։ Անոր համար ալ թէպէտ մեր նախընթաց պատարագներուն մէջ ալ Հաւաքիչը վերջինները վերջին սովորութեան յարմարցուցած ըլլայ, մենք փոխած ենք նախնականին։ Հիմակ կաթուղիկեայ հայը, Թիւ պատարագէն, վարժած է՝ առ բարձր հնութեան յարգելի Սցուրգները քահանային բերնէն լսելու։

[44] "Ի վեր արարէք." անշուշտ մեր թարգմանչին սովորական ձայնից զանազանութիւններէն մէկը՝ փոխանակ հնոյն "ի վեր ընծայեցուցէք". սակայն սովորութիւնը՝ հնագոյն Ապատարագին "ի վեր ընծայեցուցէք զմիտս" պահեր է աւելի յարմարաբար։

[45] "Ունիմք առ քեզ...." առ Սցուրգին յունականը քերականապէս այլազգ է, այսինքն "Ունիմք առ Տէր" — Habemus ad Dominum, մեր թարգմանը հոս ալ հետեւած է մեր հին Առաջին պատարագին թարգմանութեան, մանաւանդ թէ անկէ առած սովորութեան։ Սակայն մեր հին թարգմանութեան գաղցեւ մէկ մասնաւոր հանճոյքն է, ինչպէս Սաղմոսաց մէջ առ տողին թարգմանութենէն կ'երեւայ՝ "Ծարաւի է անձն իմ առ քեզ Աստուած հզօր եւ կենդանի." յունարէնն է "Ծարաւի է անձն իմ առ Աստուած հզօր եւ կենդանի։"

[46] "Քեզ, էն եւ ես եւ էդ Աստուած, անսկիզբն եւ անքննելի, երրեակ միութիւն, միշտ երկրպագել փառաւորելով." առ մեր պատարագին սուրբ սկզբնական մէկ կտորը հոս կը գտնենք պահուած։ Բոլորովին Գրիգորի բացատրութիւնք են՝ որուն լեզուն առէպ Երրորդութիւն կը հնչէ։ Դեռ կը կարդար զառանք հոս անշուշտ Յարութեան աւագ օրհնութեանց մէջ "որ էն եւ ես եւ էդ Աստուած" գրողը՝ Քրիստոսի միայն անձին նկատմամբ։ Իրաւացի կը տեսնենք թէ առ բացատրութիւնը "էն եւ ես եւ էդ Աստուած" պէտք չէ մէկ անձի մ'առնուլ, ինչպէս Շարականը կ'ընէ, եւ չէ հասկցած։ Բայց իրաւունք ունի Հ. Մկրտիչ որ երեք անձանց վրայ կ'իմանայ. այլ պէտք էր առ այս ուրիշ մը կոչել՝ զօր օրինակ զխորով։

Սակայն ուղելով առոր քերականական լուծում մը տալ, չենք գտներ։ Առ քերականական լուծումը չի տրուիր՝ բայց եթէ գրական (biblique) լուծմամբ կամ ակնարկութեամբք՝ զորանք առ ասութիւնը կը պարունակէ եւ որովք շինուած է։ Առ ըլլալով՝ նաեւ քերականապէս ամենայն ինչ պայծառ է։

Այս կերպով՝ հետեւեալ բոցոյոյթեւը՝ "երրեակ միութիւն" (երեք դէմք եւ մի էութիւն) կատարեալ կը գտնէ իր բոցոյոյթումը՝ "էն եւ ես եւ էդ Աստուած" — դ գիրը ... առմամբ։ Ուստի նախնական գրողին արժանի բացատրութիւն մը կ'ելլէ. եւ թարգմանչին ամենապարզ եւ յստակ թարգմանութիւնը։

Ի՞նչ է գրական առմամբ առնուլ։

Չէ թէ միայն Էնը՝ որն որ ի սուրբ Գիրս կ'անուանուի Բարեւ Հայր, առաջին անձ իմանալ, այլ նաեւ Եսը եւ Էդը գրական առնուլ։ Վասն զի գրական է նոյնպէս՝ երբ որ Հայր Աստուած, ըստ "Որդի իմ ես դու," երկրորդ դէմք. եւ Որդին ըստ "Հոգին է Աստուած," Աստուած Հոգին է՝ երրորդ դէմք։ Առ խօսքը՝ գրական երեք

*երկրպագել փառաւորելով: Որ քոյին, Հայր,[47] անզննելի եւ արարչակից Բանիւդ զանիծիցն բարձեր զկրճիմն, որ ժողովուրդ[48] ինքեան՝ զառ ի յեկեղեցւոյ[49] սեպհականեաց զհաւատացեալս ի քեզ. եւ զննելի բնութեամբ ըստ ի Կուսէն անատեսութեան հաճեցաւ բնակել ի մեզ, եւ նորագործ աստուածայէս ճարտարապետեալ երկինս զերկիրս արար:[50] Զի որում ոչն հանդուրժէին առաջի կալ զուարթնոցն[51] Ջոկք՝[52] զարհուրեալք ի փայլակնացայս[53]*

‖73 MN "որ ժողովուրդ ինքեան զեկեղեցի առեալ սեպհականեաց" եւն: ‖74 MN անատեսութեանն: — W բնակիլ (= N.) ‖75 MN "զերկիրս երկին արար. վասն զի որում (M որ) ոչ հանդուրժէին" եւն: ‖76 M զուարթնոցդ

բառերը ուրիշ բառերով փոխարինելով՝ կը թարգմանուի աշխարհաբար հայերէն Տէր-յոնա-դեօ՝ ասանկ. Առաջին, երկրորդ, երրորդ գիմք գոյոդդ Աստուած, երրեակ միութիւն: Աստի նորէն կ'ըսենք ր ուրիշ բան չէ հոս, բայց եթէ իբրեւ յոշոյոն ըօր մը, ինչպէս գրաբար հայերէնի մէջ ամէն ատարօգելի կը կայէ, օրինակի աղագաւ՝ երբ որ կ'ըսուի "Ճշմարիտդ Աստուած," հոս կ'ըսուի "Երրորդականդ Աստուած:" Արդ հոս ան կ'ըսէ Ս. Գրիգոր Աստուծոյ վրայ շատ բառերով, զորն որ Հայք մի միայն թուով. "Երրորդութիւն" ըսելով, ըսած են, այսինքն երից գիմաց յորէը, եւ աւելին ալ: Լատիներէն ճիշդ թարգմանուած կ'ըլլայ՝ եթէ ըսենք Qui est, et es, atque est Deus, trina unitas. Յունարէնի համար ճարտարի մը կարօտ ենք:

Անոր համար զարմանք է թէ ինչու առ պատարագին մէջէն ասանկ նկարագրական եղած խօսք մը հանած են Հայք՝ զորն որ Արիանոսաց կենդրոն եղած քաղաքին մէջ կ'աղօթէր Սուրբը, բայց եթէ չհասկընալով ԺԱ դարուն, երբ որ Բիւզանդեան յաւելուածներ ընդունելու սկսան: Անոր համար կ'ըսենք թէ անիկայ իր տարօքն պէտք է նորէն հոն բերել՝ ուր սկզբնաբար գրուած էր, յամբողջութիւն ան պատարագամատոյցին, եւ թողուլ ի Շարականին այնպէս՝ յանձահ: Անիկայ ամօթալի աղաւաղութիւն մըն է անշուշտ. հոն (Շարականին մէջ) թողուլ, եւ հոս (պատարագամատոյցին մէջէն) վերցընելը:

47 "Որ քոյին, Հայր." առ ալ վերինին հետ մէկտեղ, չենք գիտեր՝ ինչու եւ ինչպէս՝ մէկդի թողուած է. նոյն իսկ Լամբրոնացւոյն քով ասանք կը պակսին, որոնք, եթէ նորէն իրենց տեղը գրուին, աւելի վայելչութիւն կը բերեն. Այն առ հանուածներուն տեղը գրուած է "Երկիր պագանելով փառաւորել զքեզ, Հայր ամենակալ:"

48 "Որ ժողովուրդ." ամանք կ'ուզեն կարդալ, նախընթաց "զկրճիմն" բառին վերջին ն գիրը վրան առնելով, "Նոր ժողովուրդ," յատնագոյն գրչութեան մը հետեւելով՝ որն որ սակայն առաջինկայիս չի հաւատարիր հեղինակութեանը. (տես օրինակի աղագաւ ի կարգի Մեկն. Լամբր. տարբերութիւն երկու Օրինակաց, էջ 364). եւ որ աւելին է՝ խօսքին քերականական կապը չի տանիր, բայց եթէ բան մ'աւելցընենք այսպէս՝ "որ Նոր ժողովուրդ" եւ այլն. առ որ գոնէ մենք չենք գիտեր հեղինակութիւն մը:

49 "Զառ ի յեկեղեցւոյ." Հատարակ ընթերցուածը, ինչպէս ծանօթ է, ունի "առեալ զեկեղեցի." Լամբ. "զեկեղեցի առեալ:" Վերջիններով առաջինը, ինչպէս կ'երեւայ, հարթել ուզուած է:

50 "Երկինս զերկիրս արար:" Չէ թէ մինակ բանաւորօրէն լաւագոյն է Հատարակ ընթերցուածը "զերկիրս երկին արար." հապա նաեւ սկզբնական կ'երեւայ՝ Մանդակունւոյն Պենտեկոստէի աղօթից Գ դրուագին մէջ այսպէս ըլլալով:

51 "Առաջի կալ զուարթնոցն." չենք կարծեր որ յունական բնագրին մէջ հիմ մ'ունեցած ըլլայ "զուարթնոց" բառը՝ զորն որ Ասորիք եւ անոնցմէ առնելով՝ Հայք կը գործածեն փոխանակ "հրեշտակ" ձայնին՝ Դանիէլի մարգարէութեան (Դ. 10, 14, 20) համաձայն: Թարգմանիչը բառից զանազանութեան համար, գուցէ նաեւ վսեմութեան համար, նոյնը մէկ անգամ հոս կը գործածէ: "Տէր ամենակալ" աղօթքին աւելի հնագոյն թարգմանիչը "զօրութիւնք երկնից" ըսելու տեղ՝ կ'ըսէ "զուարթունք երկնից:"

52 "Զուարթնոցն Ջոկք." Լամբր. "Ջոկքն" կը կարդայ թէ՛ իր պատարագին եւ թէ՛ իր Մեկնութեան ընթացքին մէջ, անշուշտ աւելի ճաշակով:

53 "Փայլակնացայս:" Ս. Գրիգորի առէպ յպյամ գործածած ἔλλαμψις, effulguratio ձայնը՝ զորն որ ուրիշ տեղ "Ճառագայթարձակ լոյս" թարգմանած էր մեր թարգմանը, հոս կը յեղաշրջէ՝ աւելի բառին իմաստին մօտ՝ "փայլակ-

եւ յահեղ լուսոյ աստուածութեանդ, եղեալ այգալխոյդ մարդ՝ յաղագս մերոյ փրկութեան, շնորհեաց եւ մեզ ընդ երկնայնոցն պարել ընդ հոգեղէն[54] պարս, ընդ սերովբէսն եւ ընդ քերովբէսն միաձայն սրբասացութեամբ յաւերժել նուագս, համարձակապէս բարբառով[55] աղաղակել ընդ նոսին եւ ասել. Սուրբ, սուրբ, սուրբ. Տէր զաւրութեանց։ Լի են երկինք եւ երկիր փառաւք քո։ Աւրհնեալ, որ եկիր եւ գալոց ես անուամբ Տեառն։ Աւրհնութիւն[56] ի բարձունս։

### ԿԱՆՈՆ

Ե. — Սուրբ, սուրբ, սուրբ[57] ես ճշմարտապէս եւ ամենասուրբ։ Եւ ո՞[58] ոք պանծասցի բանիւ բովանդակել[59] զքո ի մեզ զանբաւ բարերարութեանդ զեղմունս.[60] որ եւ անդէն իսկ ի նախնումն զանկեալն ի մեզս[61] զանազան յեղանակաւք[62] խնամեալ սփոփեցեր. մարգարէիւք, աւրինացն տուչութեամբ,

ջոկք։ ||77 MN “ի փայլակնացայտ եւ յանճառելոյ լուսոյ։” ||78 M “շնորհեաց մեզ”, առանց “եւ” զօդի. յետոյ MN “պարել ընդ հոգեղէն պարսն (M զհոգեղէն զպարս.) եւ ընդ սերովբէսս եւ ընդ քերովբէսս” ունին։ Իսկ W “ընդ սերոբէսն եւ ընդ քերոբէսն” ունի։ ||80 MN “եւ համարձակապէս գոչելով աղաղակել” ունին։ ||81 Լամբրոնեանն նախ խրատագիր մ'ունի թէ ժողովուրդը կ'ըսէ “Սուրբ սուրբ” ունի։ ||82—3 MN “որ գալոց ես անուամբ Տեառն. ովսաննա (M ովսաննայ) ի բարձունս։”

Ե. ||85 “Սուրբ, սուրբ, սուրբ ես ճշմարտապէս եւ ամենասուրբ” ներգործութեամբ ունին հոս MN, իսկ Խոսրովայ (C եւ W) քով չենք տեսներ գրուած, բայց Մեկնութենէն կը հասկցուի որ կար իր օրինակին մէջ, բայց կ'երեւայ թէ “փառաբանել” բառով մ'ալ. վասն զի կ'ըսէ Խոսրով. (տպ. էջ 27, տող 35.) “Ճշմարտապէսն՝ զատոյգն ասէ. եւ ամենասուրբն՝ զամենայնիւ սուրբն. եւ սուրբ է փառաբանել. զի որ առանց պակասութեան ունի զփառսն՝ ճշմարտապէս փառաւորեալ է” ունի։ — MN “եւ ո՞վ ոք պանծասցի” ունին։ ||87 MN “զանկեալն ընդ մեզ՝ զանազան յեղանակաւք” (N եղանակօք)” ունին։ ||90—91 MN “տուր

նացայտ լոյս։” Իսկ մէջը մնած “եւ ահեղ” մեզի հարազատ չ'երեւար։ Հասարակ ընթերցուածը Լամբրոնացւոյ հետ՝ գրական բառ մ'ունի անոր տեղ “եւ յանճառոյ։” (Վերը կոչուած տեղերուն վրայ աւելցուր նաեւ՝ Ճառ. Խե. գլ. Ե):

54 “Ընդ հոգեղէն պարս.” լաւագոյն եւ իմաստին աւելի յարմար Հասարակ ընթերցուածը միայն Լամբրոնացւոյն՝ “զհոգեղէն պարս։” Ասոր հակառակ Հասարակ ընթերցուածոյն “պարս” ուղղելի է Խոսրովայ եւ Լամբրոնացւոյն հետ “պարսն” որն որ բանասիրօրէն ջիղ կը յաւելու խօսքին։

55 “Բարբառով” առուգիւ հարազատ չէ, եւ նախադասելի է Հասարակ ընթերցուածը եւ Լամբր. որն որ կը կարդայ “գոչելով” որ ուղղագոյն է ըստ Vulgata բնագրին եւ որով կ'ամբողջանայ չորեքդիմի կենդանեաց ձայնը՝ 1. “երգել”ու, 2. “գոչել”ու, 3. “աղաղակել”ու, 4. “ասել”ու. concinentes, clamantes, vociferantes et dicentes. (Եզեկիէլ, Ա. 10, 24։)

56 “Օրհնութիւն,” Լամբր. “ովսաննա,” միայն Հասարակ ընթերցուածոյն։

57 “Սուրբ, սուրբ, սուրբ.” յունական բնագրին մէջ միայն մէկ անգամ “սուրբ” կրնայ ըլլալ. տես ասոր վրայ վերը՝ էջ 130։ Խոսրով ալ զօթքին սկիզբը յառաջ չի բերեր, կ'ենթադրէ. սակայն տարակոյս չի կրնար ըլլալ որ եթէ բերէր, երիցս կրկնուած պիտ'որ ըլլար “սուրբ”։

59 “Բանիւ բովանդակել,” յունարէնը ἐξειπεῖν, verbis consequi, տես վերը էջ 226, Ծան. 18։

60 “Բարերարութեանդ զեղմունս,” τῆς ἀγαθότητος ὑπέρχυσιν, bonitatis superfusionem, տես վերը Բ. Պարգ. էջ 226, Ծան. 19։

61 “Ի մեզս.” Հասարակ ընթերցուած՝ “ընդ մեզօք։”

62 “Յեղանակօք,” որն որ լաւագոյն՝ մա-

քահանայութեամբ եւ ստուերակերպ[63] երինջոյն մաքուցմամբ: Իսկ ի վախճան աւուրցս այսոցիկ զբովանդակ իսկ զպարտեաց մերոց լուծեալ զդատակնիք, զքո Միածինդ ետուր մեզ[64] պարտապան եւ պարտս, զենումն եւ ածեալ, զառն եւ երկնաւոր հաց, քահանայապետ եւ պատարագ:[65] Վասն զի դա[66] է բաշխաւղ, եւ նոյն ինքն բաշխի ի միջի մերում միշտ եւ անծախապէս:[67] Վասն զի եղեւ հաւատարապէս[68] եւ առանց ցնորից մարդ, եւ անշփոթ միութեամբ[69] մարմնացաւ[70] ի սուրբ եւ յաստուածածնէն Կուսէն Մարիամայ,[71] ճանապարհորդեցաւ[72] ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս առանց մեղաց, եւ յաշխարհահակեցոյցն եւ յառիթն փրկութեան մերոյ եկեալ կամաւ ի խաչն,

---

զմեզ զՈրդիդ քո Միածին" եւն: ‖92—3 MN "վասն զի ինքն է բաշխաւղ (N բաշխող, CW բաշխօղ, M բաշխաւղ.) եւ նոյնք (N նոյն ինքն = CW) բաշխի է մեզ (M ի միջի մերում = CW) միշտ անծախապէս:" ‖94 MN "հաւատարմա—" (փխ. "հաւատարապէս:") ‖95 Միայն M "մարմնացեալ." (փխ. "մարմնացաւ:") ‖96 "ճանապարհորդեցաւ" ունի Խորով (C եւ W), իսկ Լամբրոնեանն (MN) "ճանապարհորդեաց:" ‖97 MN "յաշխարհահակեցոյց եւ յառիթն" եւն: ‖98—9

նուանք թէ ուղիղ ընթերցուած է. վասն զի սովորական եղած "եղանակ" ուղիղ չ'երեւար:

63 "Ստուերակերպ." Գրիգորի σκιώδης բառին մեկնաբանական թարգմանութիւնը, տես վերը Դ. Պարզ. Ծան. 43: Ճառ ԼԹ. գլ. 3. Legalis atque umbratilis *(σκιώδης)* purgatio, quae ...pollutos per vitulae cinerem lustrat.

64 "Զքո Միածինդ ետուր մեզ" աւելի զօրութիւն ունի քան թէ Հասարակ ընթերցուածոյնը "ետուր մեզ զՈրդիդ քո Միածին:"

65 "Քահանայապետ եւ պատարագ:" Ճառ ԽԵ. գլ. 22. Ille, inquam, magnus et nobilis Dei, tum pontificis tum victimae sanguis, *(τοῦ Θεοῦ καὶ ἀρχιερέως καὶ θύματος)*. եւ Ճառ ԼԸ. գլ. 16. Jesum ... videbis ... ut agnum offerri et ut sacerdotem offerre.

66 "Դա է." Հասարակ ընթերցուած "ինքն." Լամբր. "ինքն" թէ պատարագին եւ թէ Մեկնութեան կարգին մէջ:

67 "Միշտ եւ անծախապէս." Ն— կը պակսի Հասարակ ընթերցուածոյն, ինչպէս նաեւ Լամբրոնացւոյն:

68 "Եղեւ հաւատարապէս." կրնայ հարազատ ըլլալ Հասարակ ընթերցուածը, ինչպէս Լամբր. ալ՝ "եղեալ հաւատաւեաւ:"

69 "Միութեամբ" համաձայն նաեւ Լամբրոնացւոյն. ետքի ատենները փոխուած է "միաւորութեամբ": Բայց հիները ատեն (գոնէ ասոր թարգմանութեան ատենները) "միաւորութիւն" ձայնն աւելի իբրեւ ἑνότης, unitas կ'առնուէին քան թէ իբրեւ ἕνωσις, unio ինչպէս այս Աստուածաբանին հին հայերէն թարգմանութեան մէջ ("Առ որոտ գրքին ԺԳ. Ճառին մէջ) "Մի է ոչ դիմօքն, այլ աստուածութեամբն, միաւորութիւն՝ Երրորդութեամբ երկրպագեալ, եւ Երրորդութիւն՝ ի միաւորութիւնն գլխաւորեալ:"

70 "Մարմնացաւ" կը կարդայ Խորով հոս, ինչպէս Լամբ. ալ: Բայց Հասարակ ընթերցուածոյն "մարմնացեալ" նախադասելի կ'երեւայ:

71 "Ի սուրբ եւ յաստուածածնէն Կուսէն Մարիամայ". աւելի հարազատ կը հնչէ սա բառից կարգը՝ որմէ չի տարբերիր Լամբր. ալ, քան թէ Հասարակ ընթերցուածոյնը:

72 "Ճանապարհորդեցաւ" (չէ թէ "ճանապարհորդեաց") նախնական հարազատ ընթերցուածը, որն որ միայն հոս մնացած է, որուն համաձայն է Է դարուն Մաթուսաղայի Սիւնեաց եպիսկոպոսի, կամ լաւ եւս՝ Եզր. Կաթ. եւ աթոռակցաց առ Հերակլ կայսր գրած թղթոյն մէջի կտորը. եւ քերականապէս ալ ուղիղը կ'երեւայ. ("Ճանապարհորդեցաւ ընդ ամենայն կիրս կենցաղոյս." Օրբել. Հատ. Ա., էջ 167:) Գոնէ ըստ ձեւոյ բանից սա խօսքը՝ "Ճանապարհորդեցաւ (կամ ճանապարհորդեալ) ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս ... եւ ... եկեալ կամաւ ի խաչն" կրնայ համեմատուիլ Ս. Գրիգորի հիմայ կորսուած մէկ գրքէն Եփեսոսի տիեզերական ժողովոյն մէջ յառաջ բերուած Հատուածին մէջի խօսքին՝ "Մաքուրն եւ անմահ՝ զմարդկայնոյս բնութեան յանձն առնու աղտ, եւ ընդ ամենայն աղքատութիւն մեր շրջագայեալ մինչեւ ի մահն հասեալ էր." (տես Կիւրղի Պարապմանց գրքին մէջ, էջ 454:)

Առեալ զհացն յամենասուրբ ի կենդանարար ի ձեռս իւր,[73] աւրհնեաց, գոհացաւ,[74] ետ իւր[75] ընտրեալ աշակերտացն՝ ասելով.

## ՍՐԲԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Առէք կերայք[76] ի սմանէ ամենեքեան. այս է մարմին իմ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի:[77]

Ըստ նմին աւրինակի[78] եւ զբաժակն առեալ՝ աւրհնեաց, գոհացաւ, ետ իւրոց ընտրեալ աշակերտացն՝ ասելով.

Առէք արբէք ի սմանէ ամենեքեան. այս է արիւն իմ նորոյ ուխտի, որ վասն ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն մեղաց:[79] (Ամէն:)

---

MN "Առեալ զհացն ի սուրբ, յաստուածային, յանմահ, յարարչագործ ձեռս (M ի ձեռս) իւր, օրհնեաց, գոհացաւ, ըմբեաց, եբեկ, ետ իւրոց ընտրեալ, սուրբ (— M չունի "սուրբ" —) եւ բազմեալ աշակերտացն՝ ասելով," եւն: ‖101 MN "Առէք կերայք ի սմանէ:" ‖102 M "որ վասն ձեր եւ բազմաց բաշխեալ ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց." N "որ վասն ձեր է բաշխեալ ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց:" MN կը կցեն՝ "Ժող. Ամէն:" ‖103–4 MN "գոհացաւ, ըմբեաց, ետ իւրոց ընտրեալ, սուրբ եւ բազմեալ աշակերտացն" եւն: ‖105–6 MN "Առէք արբէք ի սմանէ. այս է արիւն իմ նոր ուխտի՝ որ վասն (M յաղագս) ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց:" — Փակագծեալ "Ամէն" չկայ Խորհրդայ մեկնութեան մէջ, բայց կ'ենթադրուի. MN "Ժող. Ամէն:"

73 "Յամենասուրբ ի կենդանարար ի ձեռս իւր." Հիմնական Հաւաքական Ընթերցուածը՝ "ի սուրբ յաստուածային յանարատ եւ ի պատուական ձեռս իւր." Լամբրոնացի՝ "ի սուրբ յաստուածային յանմահ յարարչագործ ձեռս իւր:" "Արարչագործ" նոր տեսններ գուցէ անոր համար թող տրուած ըլլայ որ զեղծում մը չըլլայ միաբնեայց գաղափարով տանելու առ ըստ ինքեան անմեղ ձայնը: Սակայն, ինչպէս Խորհրդայ ընթերցուածէն կը տեսնենք, ոչ ան եւ ոչ յարակիցները հարազատ եւ սկզբնաբար մեր առ պատարագին են:

74 Խորհրդայ ընթերցուածոյն կը պակսի "եբեկ:" Լամբր. անկէ առաջ կը յաւելու "ըմբռնեաց," զոր որ Հաւաքական Ընթերցուածն ալ՝ Խորհրդայ հետ՝ չունի. նոյնն իմանալու է նաեւ բաժակին նկատմամբ:

75 "Իւր ընտրեալ." կ'իմանանք "իւր" իբրեւ գոյական, սեռական հոլով՝ իբրեւ էրէն ընտրած, իրմէ ընտրած: Տես վերն ալ, էջ 136 եւն: Հաւաքական Ընթերցուածը եւ Լամբր. "իւրոց:" "Սուրբ եւ բազմեալ" կ'աւելցընէ, նոյնպէս Լամբրոնացւոյ հետ Հաւաքական Ընթերցուածը:

76 "Առէք կերայք:" — Շատ անճահ է հիմնական Հաւաքական Ընթերցուածոյն տպագրութեանց ռամկական "կերէք," փոխանակ գրաբար "կերայք." ինչպէս անճահ կ'ըլլար՝ եթէ ռամկօրէն "եկէք — տարէք" ըսուէր՝ գիտութեամբ գրաբար "եկայք — տարայք" ըսելու: — Ոչ ինչ նուազ անճահ է "հեղանի" ալ՝ փոխանակ "հեղու": Երկուքին ալ Ձեռագրաց մէջ հետքը չկայ:

77 "Որ վասն ձեր ... բաշխի." Լամբր. "է բաշխեալ." սակայն մեկնութեան կարգին մէջ նոյն տեղը կը կարդայ "բաշխի:"

78 "Ըստ նմին օրինակի." Հաւաքական Ընթերցուածը "Նոյնպէս:" — "Որ վասն ձեր." այսպէս եւ Խորհրդ. եւ Լամբր., իսկ Հաւաքական Ընթերցուածը "յաղագս:"

79 Խորհրդ. քիչ մը ետքը կը կարդայ՝ "ի թողութիւն մեղաց:" — Գոնէ հոս՝ "Ամէն" կ'ենթադրուի:

80 Մեր պատարագներուն մէջ առիկայ երրորդն է որ հին ἀνάμνησιςէն յառաջ նոր ἀνάμνησις մ'ունի՝ որն որ միեւնոյն գաղափարաց շարք մը կը ցուցընէ, նոր ճարակած Ապողինարեան մոլորութեանց գիտութեամբ ի Գրիգորէ յօրինուած:

81 "Որ զայն միշտ ... Տէրդ," բոլորն ալ ետքի փոփոխութիւններ, ըստ մասին նաեւ ծեքումներ կ'երեւան, բայց արդէն Լամբրոնացւոյ տեսններէն:

Զ.[80] — Որ զայն միշտ ի յիշումն իւր առնել մեզ պատուիրանադրեաց, բարերար եւ մարդասէր Տէրդ.[81] եւ լինել ի սորին փայրս մահու՝ իւրով[82] մարմնովն զոր ընկալաւ ի մերմէս յազգակցութենէ.[83] եւ զնիգս դժոխոցն աղարտեալ[84] հզօրեղապէս, ծանոյց զինքն[85] հաւատեաւ Աստուած կենդանեաց եւ մեռելոց։

Նա արդ մեք, Տէր, ըստ դորին[86] հրամանատուութեան յառաջ բերեալ զայս խորհուրդ փրկական մարմնոյ եւ արեան Միածնիդ քոյ, յիշեմք զդորին որ վասն մեր զփրկութիւնագործ զչարչարանսն, զկենդանարար խաչելութիւնն, զերեքաւրեայ զանապական զթաղումն, զերանելի զյարութիւնն, զաստուածապէս համբարձումն, զահաւոր եւ զփառաւորեալ զմիւսանգամ գալուստն։[87]

*Ժողովուրդն.* Յամենայնի զովեմք զքեզ, աւրհնեմք զքեզ, գոհանամք զքէն, աղաչեմք զքեզ, Տէր Աստուած մեր։[88]

---

Զ. ‖107–8 MN “Եւ զայն միշտ իւր յիշատակ առնել պատուիրան աւանդեաց մեզ բարերար Որդիդ քո Միածին։” ‖109 M “ի մերմէս ազգակցութենէ։” ‖110 MN ըստ նորագունին՝ “զքեզ միայն ծանոյց մեզ հաւատեաւ Աստուած ճշմարիտ, զԱստուածդ կենդանեաց եւ մեռելոց։” ‖112 MN “ըստ այամ հրամանատրութեան” եւն։ ‖113 MN “Միածնիդ քո։ — MN “յիշեմք զդորա որ վասն մեր զփրկագործ (— W “զփրկութիւնս գործ” —) զչարչարանսն, զկենդանարար զխաչելութիւնն (այսպէս M եւ W, իսկ N “զկենդանարար զխաչելութիւնն”), զերեքօրեայ թաղումն (M զերեքաւրեայ զթաղումն), զերանելի յարութիւնն, զաստուածապէս համբարձումն, զնստելն ընդ աջմէ քո Հօր, զահաւոր եւ զփառաւորեալ միւսանգամ գալուստն (M “զահաւոր եւ զմիւսանգամ” եւն) խոստովանիմք եւ օրհնեմք։ Զքոյս ի քոյոց (N ի քոյոցս) քեզ մատուցանեմք ըստ ամենայնի եւ յաղագս ամենեցուն” եւն։ ‖117–8 “Ժողովուրդն”

— Իսկ “պատուիրանադրել” տը նիւթերուն դասական (classique) բառն է ան պատարագներուն լեզուին մէջ։

82 “Իւրով մարմնովն” նոյնպէս հարազատ կ'երեւայ։ — “Մարդասէր Տէրդ.” Լամբր. “Որդիդ քո Միածին։” “Միածին” քանի մը տող ետքն արդէն պիտ'որ գայ. ան զանազանութիւնը աւելի “Տէրդ” կ'ուզէ։

83 Հասարակ ընթերցուած “զոր ի մերմէս ընկ. յազգակց.։”

84 “Զնիգս դժոխոցն աղարտեալ.” Յունաց աղօթական ձեւերուն մէջ ծանօթ առութիւն κλεῖθρα ᾅδου διαῤῥήξας. Պենտակոստ. Գ. աղօթքին մէջ ի Մեծի աղօթամատուցի Յունաց։

85 “Ծանոյց զինքն հաւատեաւ Աստուած կենդ. եւ մեռ.” ուր Հասարակ ընթերցուածն է, Լամբրոնացւոյն հետ, “զքեզ միայն ծանոյց մեզ ճշմարիտ Աստուած (կամ Լամբր. “հաւատեաւ Աստուած ճշմարիտ”) զԱստուածդ կենդ. եւ մեռ.։” Երկու նախընթաց պատարագներուն մէջ տեսանք որ երկու սասումն ալ Ս. Գրիգորի գաղափարներուն մէջն է. անոր համար չենք կրնար Խոսրովայ ընթերցուածն արհամարհել, այլ մանաւանդ, իբրեւ սուրբ Հօր բուն գրածն աւելի մերձաւորապէս համաձայն, այն ընթերցուածը կը համարինք հարազատ։

86 “Ըստ դորին” կարդա “դմին։” — Հասարակ ընթերցուածը, Լամբրոնացւոյ հետ, “ըստ այամ հրամանատրութեան։”

87 “Զմիւսանգամ գալուստն” բառերուն վրայ ետքէն աւելցուած է, Բիւզանդեան պատարագէն առնելով, “խոստովանիմք եւ օրհնեմք։ Եւ (Լամբր. չունի՝ “եւ”) զքոյս ի քոյոցս քեզ մատուցանեմք ըստ ամենայնի եւ յաղագս ամենեցուն։” Իսկ Խոսրով, էջ 38, ի կարգի բանից կ'ըսէ “արդ առեմք թէ յիշեմք զայս ամենայն եւ գոհանամք” իմաստը մեկնելով կ'ըսէ, չէ թէ իբրեւ բնագրին շարունակութիւն. վասն զի “յիշել” արդէն նախընթացաբար կայ բնագրին մէջ։

88 “Յամենայնի” (զովեմք զքեզ...)։ Յունաց κατὰ πάντα որն որ նախընթաց Ծանօթութեան մէջ ուրիշ առենուընէ “ըստ ամենայնի” թարգմանուած տեսանք։ — Աս կցուրդը Բարսղի պատարագէն, կամ յունական եւս, Կեսարիոյ եկեղեցւոյն պատարագէն է։

Ի. — *Քահանայն.* *Զքեզ արդարեւ Տէր Աստուած մեր գովեմք եւ զքեն գոհանամք[89] որ զաւր հանապազ զանց արարեր զմերովք չարագործութեամբքս,[90] որ այսպիսի ահաւոր եւ անպատում խորհրդոյս կարգեցեր սպասաւորս, ոչ յաղագս մերոց ինչ բարեգործութեանց,[91] յորոց յոյժ թափուր միշտ եւ ունայն գտանիմք հանապազ.[92] այլ ի քո բազմագեղ ներողութիւնդ ցանկ ապաւինեալ, համարձակիմք մերձենալ ի սպասաւորութիւն մարմնոյ եւ արեան Միածնի քոյ։*

*Խաղաղութիւն ամենեցուն։*

*(Աստուծոյ երկրպագեսցուք։)*[93]

---

խրատագիրն՝ ինչպէս սովորաբար, չունի Խաղաղ։ MN կը սկսին՝ "Ցամենայնի օրհնեալ ես Տէր. օրհնեմք զքեզ, գովեմք զքեզ, գոհանամք" եւն։

Ի. ‖[120] MN "...եւ զքեն գոհանամք հանապազ, որ զանց արարեր զմերով անարժանութեամբքս" եւն։ ‖[121] "Խորհրդոյս" ունին C եւ N, "խորհրդոյ" M եւ W, իսկ N այսպէս կ՚ըսէ "...անպատում խորհրդոյս կարգեցեր զմեզ սպասաւորս" եւն։ ‖[122] Այսպէս C եւ W, իսկ M "յաղագս մերոյ ինչ բարեգործութեանց." N "յաղագս մերոյ ինչ բարեգործութեան." ‖[122—3] Այսպէս CW եւ նաեւ M, իսկ N "յորոց յոյժ թափուր եմք, եւ միշտ ունայն գտանիմք հանապազ"։ ‖[123—4] N "ցանկ ապաւինեալ, համարձակիմք եւ մերձենամք... Միածնի քո." M "...ցանկ ապաւինել-ով համարձակիմք մերձենալ... Միածնի քո Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի, որում վայ.։" ‖[126—7] C այսպէս ունի նաեւ փակագծեալն եւ կը յաւելու խրատագիրը՝ "Ասա սուրբ քահանայն." իսկ մեր ձեռագիրը (W) պարզ "Խաղաղութիւն" նշանակելով հոս գոհ կ՚ըլլայ։ Ըստ հրատարակչին (C տպ. էջ 39, ծան. 1) նոր օրինակները հոս կը յաւելուն՝ "Ժողովուրդն. Եւ ընդ հոգւոյդ քում։ Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք։ Ժողովուրդն. Առաջի քո Տէր։ Քահանայն խոնարհեալ երկրպագէ սեղանոյն եւ ասէ աղօթս։" Նոյններն ունի նաեւ Լամբրոնեանն MN "Քահ. Խաղաղ. (— N չունի այս տողն։ —) Սարկ. Աստուծոյ երկրպագեսցուք։ Ժող. Առաջի քո Տէր (— N չունի "Տէր"։) Քահանայն խոնարհի եւ ասէ. Երկիրպագանեմք" եւն։

[89] "Զքեն գոհանամք, որ զօր հանապազ զանց արարեր." — Հասարակ Ընթերցուածն ըստ Լամբրոնացւոյն՝ "գոհանամք հանապազ, որ զանց արարեր" եւայլն. որն որ իմաստին բերմանը նայելով՝ դժուարաւ կրնայ հարազատն ըլլալ։ Տես ատոր վրայ վերը, էջ 230, ծան. 35։

[90] "Զմերովք չարագործութեամբքս" աւելի հարազատ կը հնչէ, քան թէ Հասարակ Ընթերցուածն եւ Լամբր. "զմերով անարժանութեամբքս։"

[91] "Մերոց ինչ բարեգործութեանց." աս հարազատ ընթերցուածէն է՝ որմէ շատ անգամ տպագրաց մէջ մնացած է "մերոց," անհամաձայն հետեւեալ "բարեգործութեան։"

[92] "Յորոց յոյժ թափուր միշտ եւ ունայն գտանիմք հանապազ." — շատ աղաւաղ կերպով Հասարակ Ընթերցուածը՝ "յորոց յոյժ թափուր եմք եւ միշտ ունայն գտանիմք հանապազ." այսպէս է Լամբր. ալ։ Հոս "միշտ — հանապազ — ցանկ" ձայներուն պէսպիսութիւնը մտադրութեան արժանի է թարգմանիչը ճանչնալու համար։

[93] "Խաղաղութիւն ... Աստուծոյ երկրպագեսցուք"։ Աս աղօթքը հոս մանաւանդ նշանակուած է Խաղաղէն։ Սարկաւագի խօսքը՝ զորն որ չունին Խաղաղը։ Օրինակները, Վենետկոյ 133ինն ունի։ Աստ հակառակ Լամբր. քահանային տալու խաղաղութիւնը չունի. մինակ սարկաւագին հրամանն ու ժողովրդեան պատասխանն ունի։ Ուստի Խաղաղայ տեղէն սկսեալ, անտարակոյս է, ամէնքը կը ծռէին աս աղօթքին։

[94] Խօսած ենք արդէն աս Կոչման աղօթից վրայ՝ որն որ կրկնութիւններով ծանրաբեռնած չէ, ինչպէս կը տեսնենք չարաչար մեր հիմակուան Հասարակ պատարագին մէջ, կրկնութիւններ՝ զորոնք եւ ոչ Լամբր. դեռ ունի, ուրիշ բան չըլլալով՝ բայց վերջին տպագրական յաւելուածներ. եւ — որն որ մտադրութեան արժանի է, —

## ԿՈՉՈՒՄՆ

Ը. — Եւ կրկին[94] պաղատիմք եւ աղաչեմք եւ խնդրեմք ի քէն, Տէր, առաքեա ի մեզ եւ յառաջի եդեալ յընծայս յայս զմշտնջենաւորակից քո եւ զէակից սուրբ Հոգիդ, որոյ[95] զհացս աւրհնեալ մարմին ստուգապէս արասցէ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի. եւ զբաժակս աւրհնեալ արիւն ստուգապէս արասցէ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի. որպէս զի եղիցի սա մերձեցելոցս[96] յանդատապարտութիւն եւ ի թողութիւն մեղաց:

## ՑԻՇԱՏԱԿՔ

Թ. — Սովաւ[97] շնորհեա զսէր, զհաստատութիւն եւ զըղձալի զխաղաղութիւն եկեղեցւոյ քում սրբոյ, եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց, քահանայից, թագաւորաց, իշխանաց, ժողովրդոց, ճանապարհորդելոց եւ որք ի պատերազմունս բարբարոսաց:

---

Ը. ‖129 MN "բարերար Աստուած." (փխ. պարզ "Տէր" բառին:) ‖131–4 MN "որով զհացս օրհնեալ մարմին ճշմարտապէս արասցես Տեառնդ (M "Տեառն") մերոյ եւ փրկչիդ Յիսուսի Քրիստոսի. Սարկ. Ամէն: Եւ զգինիս օրհնեալ արիւն ստուգապէս (N "ճշմարտապէս") արասցես Տեառն մերոյ (N Տեառնդ) մերոյ եւ փրկչիդ Յիսուսի Քրիստոսի: Սարկ. Ամէն:" ‖134 Այսպէս մեր ձեռագիրը՝ W, իսկ C "...յանդատապարտութիւն, ի քաւութիւն, եւ ի թողութիւն մեղաց": Նոյնպէս MN "Որպէս զի եղիցի սա ամենեցուն մեզ մերձեցելոցս յանդատապարտութիւն, ի քաւութիւն, եւ ի թողութիւն մեղաց: Սարկ. Ամէն:"

Թ. ‖136 Այսպէս C եւ M "զըղձալի." իսկ W եւ N "զղձալի." բայց թէ M եւ թէ N կը կցեն՝ "(զխաղաղութիւն) ամենայն աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ եւ ամենայն" եւն: ‖138 Միայն M "քահանայից, սարկաւագաց, թագաւորաց, աշխարհի իշխանաց" եւն: — MN "ճանապարհորդաց, նաւելոց, կապելոց, վտան-

հաւ եւ ոչ ան սարկաւագին կրկին "Ամէն"ները կան՝ որոնք արդէն Լամբրոնացւոյն քով սկսած են երեւալ:

95 "Որոյ" (զհացս օրհնեալ) — "որո՞յ" թէ "որով" նախնական է՝ ըստ վաւերականութեան կարեւոր խնդիր մը չէ. վասն զի ի նոյն իմաստ կը յանգի: Լամբր. արդէն "որով" կը կարդայ:

96 "Որպէս զի եղիցի սա մերձեցելոցս յանդատապարտութեան եւ ի թողութիւն:" — Համառօտ Ընթերցուածն եւ Լամբր. "սա ամենեցուն մեզ մերձ. յանդա. ի քաւութիւն եւ ի թող.:"

97 "Սովաւ շնորհեա զսէր... Սովաւ եւ օդոց." — սա երկու յիշատակութիւնք, երկու նախընթաց պատարագներուն մէջ գտնուածին պէս, pro tempore խնդրուած մըն են մասնաւորապէս ներկայ եւ ծանօթ պիտոյից նկատմամբ, ինչպէս նախընթաց այսպիսի աղօթից եւ առաջիկայի գիրքէն ալ յայտնի է: Չենք կրնար մանրամասն ի սրբոյն Գրիգորէ նկատուած դէպքերը նշանակել. սակայն "սէր — հաստատութիւն" (εὐστάθεια, ուրիշ տեղ "բարեհաստատութիւն" ըստուած) եւ "խաղաղութիւն" զորն որ այնչափ ինք կ'ըղձար "եկեղեցւոյ" համար, ի մասնաւորի նոյն իսկ "ուղղափառ" բայց իրարու մէջ անդադար գժտութեան մէջ եղած "եպիսկոպոսաց," որոնց համար թագաւորական քաղքին գործուց կանոնը, բաւական մեզի ծանօթ է իր գրուածներէն. ուստի հառաչանաց ձայն մըն է "ըղձալի խաղաղութիւն" խօսքը: Սակայն առաջին "Սովաւ"ին մէջ, համեմատելով հիմակուան՝ նաեւ Լամբրոնացւոյն բնագիրը խառնակ ցուցուցածին հետ, շատ բաներ աւելցած են՝ որոնցմով խընդրուածքին մասնաւորութիւնը դժուարաւ զգալի կ'ըլլայ. "Սրբոյ եկեղեցւոյ"էն առաջ՝ ամենայն աշխարհի, "քահանայից"է ետքը՝ սարկաւագաց, "թագաւորաց" ընդհանրացուած յարելով՝ աշխարհի, (սուրբն Գրիգոր մինակ զԹէոդոս մեծ եւ Առաջինը կ'իմանար,) "ճանապարհորդելոց"էն ետքը՝ որն որ նախընթաց պատարագին ալ մասնաւոր յիշատակաց մէջ կար, կ'աւելցուին՝ "նաւելոց, կապելոց, վտանգելոց, աքսորելոց:" "Գերելոց" ալ կ'աւելցընէ ասոնց վրայ Տարօնի արքեպիսկոպոսը:

Սովաւ եւ աւդոց շնորհեա բարեխառնութիւն, եւ[98] պտղոց առատութիւն եւ ախտացելոց ի պէսպէս ցաւոց[99] փութապէս առողջութիւն.

Սովաւ հանգո զամենեսեան զյառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն.[100] (զհարս, զհայրապետս,) զմարգարէս, զառաքեալս, զվկայեալս, զեպիսկոպոսունս, զերիցունս, զսարկաւագունս եւ զբնաւ ուխտ եկեղեցւոյ քում սրբոյ, եւ յաշխարհական կարգէ զարս եւ զկանայս հաւատացեալս ի քեզ:

Ընդ որս եւ մեզ այց արասցես, բարերար եւ մարդասէր Տէր:[101]

---

գելոց, աշխատելոց, դերելոց, եւ որք” եւն: ‖140—1 MN “անդոց (M “անդեղոց”) զպտղաբերութիւն, եւ ախտացելոց ի պէսպէս ցաւս՝ զփութապէս առողջութիւն”: ‖142—3 Այսպէս CWի համեմատնաւ. M “Սովաւ հանգոյ զամենեսեան յառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն, զսուրբ հարսն, զհայրապետս” եւն. (CW չունին փակագծեալ վերջին երկու բառերս.) իսկ N այսպէս՝ “Սովաւ հանգո զամենեսեան ի Քրիստոս ննջեցեալ հարսն, զսուրբ հայրապետսն” եւն: Յաջորդ երկու բառերն այս կարգաւ ունի MN “զառաքեալս, զմարգարէս” եւն: ‖144 Միայն N “եւ զբնաւ ուխտս” եւն: ‖145 M “...քում սրբոյ. զամենայն յաշխարհական կարգէ զարս եւ զկանայս հաւատով վախճանեալս.” N “եւ զամենեսեան յաշխարհական կարգէ զարս եւ զկանայս հաւատով զվախճանեալս:” ‖146 MN “...բարերար Տէր՝ աղաչեմք:” ‖148—158 Փակագծեալս ունի Խօսրով

98 “Պտղոց առատութիւն” — Հասարակ Ընթերցուածն եւ Լամբր. “անդոց զպտղաբերութիւն:”

99 “(ի պէսպէս) ցաւոց.” — Նոյները՝ “(ի պէսպէս) ցաւս:”

100 “Սովաւ հանգո զամենեսեան զյառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն. (յունական պատարագներուն մէջի προκεκοιμημένων). (զհարս, զհայրապետս)” — աս վերջին երկու բառերը (զորոնք թէ՛ Լամբր. եւ թէ՛ Կ. Պոլիս եղած տպագրութիւնք ունին,) Խօսրովայ քով ըստ պատահման պակաս կը կարծենք, մանաւանդ նախընթաց պատարագներուն նայելով. անոր համար ալ փակագծի մէջ զանց չենք ըրած դնելու, վասն զի ինք Խօսրով քիչ մը ետքը սարկաւագին ըստ դասուց յիշելու սրբոց կարգին գլուխը կը դնէ գոնէ “զնախահարս:”

— Հասարակ Ընթերցուածն եւ Լամբր. “զառաքեալս” կը դնէ յառաջ քան “զմարգարէս:”

— Լամբր. “զամենեսեան յաշխարհական կարգէ.” Հասարակ Ընթերցուածը՝ “զամենեսեան որք յաշխարհական...:” — Լամբր. “զարս եւ զկան. հաւատով զվախճանեալս.” Հասարակ Ընթերցուած՝ “զարս եւ զկան. հաւ. վախճ.:”

Աս յիշատակութեան հատուածը, եթէ տեղափոխութիւն ալ եղած չըսենք, (այսինքն նախընթաց երկու յիշատակութենէն յառաջ եկած եւ Հոգւոյն Աշխան աղօթից յարակից չենթադրենք ալ), սուտուգիւ խանգարում կրած է: Բոլոր նախընթաց սրբոյն Գրիգորի ձեռքէն անցած պատարագները, թէ՛ Բ. թէ՛ Գ. եւ թէ՛ Դ. պատարագը սուրբերը յիշատակելու մասին միշտ կերպ մը corrective գործածած է, յայտնի ընելով անոնց համար եղած յիշատակութեան մէկալներուն համար եղածէն տարբերութիւնը: Հոս ոչինչ այնպիսի. ոչինչ կայ՝ որ մեկնէ. անոր համար իրաւամբք Հռոմի տպագրութեան մէջ սրբոց վերաբերեալ հինգ անունները — (հարց, նահապետաց, մարգարէից, առաքելոց, վկայից) — թող արուած են: Արդէն նոյն իսկ աս տառութիւնը “զյառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն” հարց, նահապետաց, մարգարէից համար անտեղի կը հնչէ եւ անզգոյշ զեղչման մը նշան կու տայ: Ասանկ ալ ըլլալով՝ թէ՛ Խօսրով եւ թէ՛ Լամբրոնացի շատ գեղեցիկ ըստ ուղղափառ առման կը մեկնեն հոս սրբոց յիշատակութիւնը:

Սարկաւագին ընելու սրբոց յիշատակութեան նկատմամբ՝ զորոնք յառաջ կը բերէ հոս Խօսրով, ատոնք պարզապէս հայկական են. անոր համար սրբոյն Գրիգորի յունականին չենք կցեր, մեր առաջին դիտաւորութիւնն ըլլալով՝ այն վերջինը, կարելի եղածին չափ, իր նախնական վիճակին մէջ ցուցընել: Աս սարկաւագին բերանն եղած սրբոց յիշատակք, որչափ թէ՛ Լամբրոնացւոյն եւ թէ՛ հիմակուաններուն նման են, ունին նշանաւոր տարբերութիւններ երկուքէն ալ, հնագոյն դարերու վերաբերելով:

101 “Բարերար եւ մարդասէր Տէր” — Լամբր. “բարերար Տէր, աղաչեմք:” Հասարակ Ընթերցուած՝ “բարերար Աստուած, աղաչեմք:”

[*Սարկաւագն.*[102] Աստուածածնին Կուսին Մարիամու, Յովհաննու Մկրտչին, սրբոյն Ստեփաննոսի յիշատակ եղիցի։

*Ժողովուրդն.* Յիշեա, Տէր, եւ ողորմեա։

*Սարկաւագն.* Առաքելոց սրբոց, մարգարէից, մարտիրոսաց, Պետրոսի եւ Պաւղոսի եւ ամենայն սրբոցն յիշատակ եղիցի։

*Ժողովուրդն.* Յիշեա, Տէր, եւ ողորմեա։

*Սարկաւագն.* Հայրապետաց սրբոց, երանելւոյն սրբոյն Գրիգորի եւ ամենայն սուրբ եւ ուղղափառ եպիսկոպոսաց եւ քահանայից եւ բոլոր ուխտի եկեղեցւոյ յիշատակ եղիցի։

*Ժողովուրդն.* Յիշեա, Տէր, եւ ողորմեա։

*Սարկաւագն.* Եղիցի յիշատակ արանց եւ կանանց հաւատով ի Քրիստոս ննջեցելոցն։]

*Քահանայն.* Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զսուրբ Սիոն,[103] զկաթողիկէ առաքելական եկեղեցի քո, զոր փրկեցեր պատուական արեամբ Միածնի քոյ եւ ազատեցեր.[104] եւ տուր սմա զանշարժ քո զխաղաղութիւնդ։

---

(C եւ W), միայն ժողովրդեան Պատասխանը հոն (տպ. էջ 45) ներգործութեամբ չէ գրուած, բայց քիչ մը յառաջ (էջ 44) յիշուած է որ ժողովուրդն քարոզին ամէն տան ծայրը կ'րսէ "Յիշեա Տէր եւ ողորմեա։" Բաց աստի կը յաւելու խորհրդով որ այս Քարոզն աւելի ընդարձակ ձեւով ալ կար, որ մեծ տօներու կ'րսուէր, "զի ըստ իւրաքանչիւրոյն է յանուանէ զոմանս յիշել յամենայն տօնակէ եւ զհամօրէն կարգակիցսն ի նոյն յարել, զորս ի փծեռ ղափից առեն՝ որք բարեկարգութեան հոգ տանին։ Իսկ զոր համառօտս հարկ է ասել ի ժամ սուրբ Պատարագին՝ է այս" եւն։ Լամբրոնեանն արդէն մեր Սովորականին պէս է հոս՝ յիշատակութեամբ անուանց եւն. (տես տպ. էջ 218—9 եւ յետոյ ի կարգին։) ||[159] W Սիոն։ — Լամբրոնեանք ամբողջ այս եւ յաջորդ տունն ըստ նորագունին՝ "Յիշեա Տէր եւ ողորմեա եւ օրհնեա զսուրբ կաթուղիկէ եկեղեցի

[102] "Աստուածածնին Կուսին Մարիամու..." — Յայտնի է թէ ասոնք՝ որ հայկական են, բաւական պատկառելի հնութիւն մը կը բուրեն. եւ ասոնց մէջ ինչ ինչ, օրինակի համար՝ "Պետրոսի եւ Պաւղոսի" առաքելոց մասնաւոր յիշատակը՝ հիմնական (նոյն իսկ Լամբրոնացւոյն ատենէն) խմբագրուած եւ ասորին ճաշակի սատուութիւններով լեցուած յիշատակութիւններէն նախադասելի են։ — Մասնաւորապէս կը ծանուցանէ Անձեւացեաց եպիսկոպոսը թէ "Որ բուն քարոզն է, բազում տունս ունի." որն որ ընդարձակ կերպով Զատկին պատարագին մէջ կը զրուցուէր։

[103] "Յիշեա, Տէր ... զսուրբ Սիոն ..."։ — Այս յիշատակութեան հատուածին մէջ տարբերութիւնք կան թէ՛ Հասարակ ընթերցուածէն եւ թէ՛ Լամբրոնացւոյն ընթերցուածէն. թէպէտ այս վերջին երկուքն էապէս իրարմէ չեն զանազանիր։

Նշանաւորն է խորհրդեան ընթերցուածոյն մէջ "Սուրբ Սիոնն։" Զաւիկայ կը ջանայ մեկնելու Անձեւացեաց եպիսկոպոսը՝ "Սիոնն մայր է ի մեր լեզուս, եւ եթէ զԵրուսաղէմի եկեղեցւոյն է մաղթանքս՝ վասն սուրբ տեղեացն Երուսաղէմի պաղատին է։ ...Եւ եթէ զամենայն եկեղեցի մայր Սիոն կոչէ՝ եւ այս չէ հեռի ի դիտաւորութենէ։"

Թողլով իրեն մեկնութիւնները՝ մեծագին կէտ մ'ալ աւելի պահած է մեզի այն ընթերցուածոյ տարբերութեամբ՝ աս եռանդնոտ Դիտապետը։ Հոն ոչ Երուսաղէմի վրայ է խօսքը եւ ոչ ալ, գոնէ ուղղակի, եկեղեցւոյ վրայ յընդհանուր։ Հապա, ինչպէս նախընթաց պատարագին մէջ մասնաւոր եպիսկոպոսի մը, սրբոյն Գրիգորի հօրը՝ Նազիանզու եպիսկոպոսին՝ համար "Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ օրհնեա" մը կարդացինք, ասանկ ալ հոս Կ. Պոլսոյ մէջ իր պերճախօս քարոզութեամբը նորէն կազմուած "կա-

*Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս, որք ուղիղ գնացիւք[105] համառաւտեն[106] զբանն ճշմարտութեան:*

---

քո, զոր փրկեցեր պատուական արեամբ (N մարմնով եւ արեամբ) Միածնի քո, եւ ազատեցեր խաչիւն որբով. շնորհեա սմա զանչարժ զխաղաղութիւն (M կցէ "քո") եւն: ||[162-3] MN "...որք ուղիղ վարդապետութեամբ համառօտեն

թուղիկէ եկեղեցւոյն" համար կ՚աղօթէ Գրիգոր՝ չէ թէ "զՍուրբ Սիոն" ըսելով (որն հայերէնին մէջ տակաւ ձեւացած պիտ՚որ ըլլայ), հապա "զնոր Սեղովմ:". Երբ որ Գրիգոր Թրակիոյ եպիսկոպոսներէն աղաչուած՝ Եւտիքականներէն, Եւնոմեաններէն գրաւուած կայսերական մայրաքաղաքն ոտք կոխեց, բոլոր եկեղեցիներն հերետիկոսաց ձեռքն էին. ինք իրեն ազգականներէն մէկուն տունը փոքր մատրան մէջ ժողովուրդը կը ժողվէր աստուածային պաշտաման եւ իրեն ճառերը խօսելու: Մատրան անունը "Անաստասիա" (Յարութիւն) ըսուեցաւ, շատ յարմար նշանակութեամբ. վասն զի ան քաղքէն հալածեալ եւ զաղարեալ ուղղափառութիւնը հոն նորէն կենդանացաւ երեք տարուան քարոզութեամբը՝ մինչեւ որ Վաղեսի մահուընէն ետքը Թէոդոս Ա. նորէն եկեղեցիները ուղղափառաց դարձուց: Բայց Գրիգորի մասնաւոր խանդաղատանքն ոչ այնչափ ան Առաքելոց մեծ եկեղեցւոյն, ոչ Սոփիա եկեղեցւոյն կ՚երթար, որչափ իրեն Անաստասիային՝ զորն որ մերթ "Նոր Բեթղահէմ" կ՚անուանէ, (վասն զի Բեթղահէմ փոքր տեղ մըն էր, բայց անկէ բոլոր աշխարհքի փրկութիւնն ելաւ), մերթ "Նոր Սեղովմ." վասն զի փախստական եւ թափառական ուղղափառութիւնը նախ հոն եկաւ՝ հանգիստ գտաւ, ինչպէս տապանակն ալ անապատին ճամբորդութենէ ետքը նախ Սեղովմ հանգչեցաւ (Յեսու, ԺԸ. 1): Կ.Պոլսէն ելած ատենը (381ին) խօսած Հրաժարական ողջունին մէջ (Ճառ ԽԲ. գլ. 26) կ՚ըսէ. Vale, Anastasia, nomen a pietate habens. Tu enim nobis fidei doctrinam, quae adhuc contemptui erat, excitasti. Vale, inquam, communis victoriae sedes, nova Silo (*ἡ νέα Σηλὼμ* կամ ըստ այլ Օր. *ἡ Σηλὼμ*) in qua primum arcam fiximus, quadraginta annis in deserto circumactam, incertisque sedibus vagantem. Մեր սուրբ Գրոց թարգմանութեան մէջ "Սեղով" գրուածը՝ Եփրեմի թարգմանութեանց մէջ կը գրուի սովորաբար "Սեղովմ." Ա. Հատ. էջ 319 եւ 351:

Նոյն մաղթանքին յաջորդ խօսքերն ալ, յայտնի է՝ ըստ Խոսրովայ ընթերցուածոյն, համաձայն են առ հասարակ առմամբ: Ծանօթ է հնոց քով՝ մասնաւոր եկեղեցւոյ մը "կաթողիկէ եկեղեցի" ըսուիլը. օրինակի աղագաւ՝ "կաթողիկէ եկեղեցի Զմիւռնացւոց" — "երէց կաթողիկէ եկեղեցւոյ այսր նիշ քաղաքի եւն:"

[104] "Փրկեցեր պատուական արեամբ Միածնի քո եւ ազատեցեր": — Առ խօսքին առաջին մասն ընդհանուր եւ սովորական է. իսկ "ազատեցեր" մասնաւոր դիտում ունի վերը յիշուած կայսերական քաղաքին ի հերետիկոսաց ազատութեան բովանդակ պատմութիւնը նշանակելու: "Եւ տուր նմա զանչափ քո զխաղաղութիւնդ." այսինքն "տուր նմա, տուր միանգամայն քո անբաւ խաղաղութիւնդ". զորն որ դեռ չունի չէ թէ ի հերետիկոսաց՝ որոնցմէ ազատեցիր, հապա ուղղափառ եպիսկոպոսաց իրարու հետ գժտելով եւ չմիաբանելով. որուն համար ալ ինքով հրաժարեցաւ, ելաւ աթոռէն՝ հազիւ երեք շաբաթ վրան նստելէն ետքը:

— Համբ. եւ Հասարակ Ընթերցուածն "ազատեցեր" շատ կարուկ գտնելով՝ աւելցուցած են "խաչիւն որբով," որով թէպէտ ոչ բառից՝ բայց իմաստի կրկնութիւն ձեւացած է. նշանակական "եւ" ձայնն ալ բոլորովին անհետ ըրած են: Թէպէտ հասարակօրէն նոյն իմաստը տալու համար ուրիշ դիրք կ՚ունենայ ան "եւ"ը, սակայն ասկէ առաջ տեսանք որ մեր թարգմանք այն գիրքն ալ նոյն առմամբ կը գործածէ: Նոյնպէս "շնորհեա սմա զանչարժ զխաղաղութիւն" ըսուելով Հասարակ Ընթերցուածոյն մէջ, Համբրոնացւոյն հետ, կորսուած է հոն սուրբ Գրոց խօսքին եղած վերաբերութիւնը: Ճիշդ անոր համար "տուր"էն կամ "շնորհեա"էն առաջ "եւ"ը վերցուցած են՝ վասն զի --, et նշանակութեամբ առած են, որով հոն ստուգիւ անտեղութիւն է. բայց անիկայ հոն դնողը ուրիշ նշանակութեամբ դրած էր:

Բայց հոս ուրիշ նշանաւոր երեւոյթ մը կը դիտենք: Համբրոնացին կամ անիկայ՝ որուն եղանակաւորած պատարագի բնագիրն իրեն առաջնորդ առած է այն Դիտապետը, աս մաղթանքին մէջ այնչափ իր կողմանէ փոփոխութիւն չ՚ըներ՝ որչափ Նախընթաց Դ պատարագին մէջէն համապատասխանող մաղթանքը հոս կը բերէ՝ աս պատարագին սեպհական մաղթանքին կը յարէ: Յայտնի է որ Համբրոնացւոյն բնագիրը, ինչպէս գրեթէ միշտ, նոյնպէս յայսմ հիմն է մեր Հասարակ Ընթերցուածոյն: Ուստի Համբրոնացւոյն

Եւ. եւս տուեալ զվարդապետն մեր եւ զվերակացու եւ զտեսուչ ոգւոց մերոց[107] (զայս անուն եպիսկոպոս[108]) եւ շնորհեա մեզ, Տէր, ընդ երկայն աւուրս։

Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զմեզ[109] եւ զառաջի կացեալ քո ժողովուրդս եւ զպատարագիս մատուցողս,[110] եւ պարգեւեա իւրաքանչիւրոցն զպիտոյսն եւ զաւգտակարսն։

Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զպտղաբերողս եկեղեցւոյ քում սրբոյ, եւ զայնոսիկ՝ որք յիշեն զաղքատս ողորմածութեամբ. եւ հատո

(N ի մեզ) զբանն ճշմարտութեան։" ‖164—66 փակագծեալ "զայս անուն Եպիսկոպոս" բառերն ալ ունին C եւ W, իսկ Լամբրոնեանք (MN) "Եւս տուեալ զեպիսկոպոսապետն մեր զայս անուն շնորհելով մեզ ընդ երկայն աւուրս" (N կը կցէ "ուղիղ վարդապետութեամբ." եւ "ժողովուրդն. Ամէն։") ‖168 CW "զպատարագիս մատուցօղս." MN "զպատարագիս մատուցողքս։" ‖169 MN "իւրաքանչիւրոց սոցա զպիտոյս եւ զօգտակարս։" ‖170—3 MN "զուխտաւորս եւ

սա խօսքերուն մէջ "Յիշեա, Տէր (եւ ողորմեա եւ օրհնեա) զսուրբ կաթողիկէ եկեղեցի քո՝ զոր փրկեցեր պատուական մարմնով եւ արեամբ Միածնի քո, եւ ազատեցեր խաչիւն որով. շնորհեա սմա զանշարժ խաղաղութիւն,"՝ ինչ որ խօսքով բնագրէն տարբեր է, նախընթաց Դ պատարագէն է։ Իսկ փոփոխութեան պատճառն ի՞նչ կրնայ ըլլալ՝ բայց եթէ մեր առաջիկայ պատարագին նախնական մաղթանքին շատ մասնաւոր դիտում մ'ունենալը։ Այսպէս ուրեմն մեր առաջիկայ պատարագն իբր թէ կարգադրողն ալ՝ իբր ԺԱ կամ ԺԲ դարուն՝ նախընթաց պատարագներն աչքին առջեւն ունէր։

105 "(Որք ուղիղ) գնացեալք" այսինքն ուղիղ ճամբով։ Հատորակ ընթերցուածն եւ Լամբր. "ուղիղ վարդապետութեամբ։"

106 "Համառօտեն զբանն." — Նոյնները կ'աւելցնեն՝ (համառօտեն) "ի մեզ զբանն։"

107 "Զվարդապետն մեր եւ զվերակացու . . ." — գործեալ մեր նախնական ընթերցուածէն մաս մը թողուած կամ փոխուած է մեր Հատորակ ընթերցուածոյն մէջ, նաեւ Լամբրոնացւոյն, որուն հարազատը կ'ընծայէ մեզի խօսքով՝ "զվարդապետն մեր եւ զվերակացու եւ զտեսուչ ոգւոց մերոց։" Տես նախընթաց Դ պատարագին մէջ ալ մաղթանքին համապատասխանող տեղը նոյներն իր հօրը վրայ բերուած յԱստուածաբանէն։

108 "Ա. Ա. եպիսկոպոս"։ — Կրնայ, ինչպէս կը կարծենք՝ ոչ առանց հիման, տարակուսիլ հոն ալ "եպիսկոպոս" ձայնին սկզբնաբար՝ այսինքն յոյն բնագրին մէջ գտնուելուն, վասն զի արդէն "զտեսուչ ոգւոց մերոց" յոյնին մէջ է՝ τὸν ἐπίσκοπον τῶν ψυχῶν ἡμῶν.

109 "Յիշեա, Տէր . . . զմեզ եւ զառաջի կացեալ ժողովուրդս." — Նախընթաց պատարագին մէջ դիտեցինք որ եպիսկոպոսը յիշելէն ետքն անմիջապէս ինք զինք կը յիշէր պատարագողը (Գրիգոր կամ այլ ոք). Նոյնը հոս կը պատահի՝ երբ որ անմիջապէս նախընթաց մաղթանաց վրայ կուգայ "Յիշեա, Տէր . . . զմեզ" եւն։ Բայց սակայն կ'ըլլայ հարազատ ընթերցուածոյն մէջ խօսքով. Հատորակ ընթերցուածը, նաեւ Լամբրոնացին, թողուցած են զանիկայ բոլորովին։ Անոր համար մեր հարազատն՝ բառէն ետքը "եւ զառաջի կացեալ ժողովուրդս," շարունակելով կ'ըսէ՝

110 "Եւ զպատարագիս մատուցողս." Խոսրով ալ վերջին խօսքերով պատարագիչ քահանայն կ'իմանայ. ("Պատարագին մատուցողն, այսինքն է, որ զխորհուրդն կատարէ" կ'ըսէ)։ Լամբր. կը կարդայ "զպատարագիս մատուցողքս," եւ կը յաւելու իր Մեկնութեան մէջ՝ "Մատուցողք պատարագին կոչէ՝ զորս ընդ ինքեան քահանայքն եւ սարկաւագունքն են ի պաշտամանն եւ կէս սարկաւագունքն. քանզի ամենեքեան նոքա ըստ իւրաքանչիւր գործոյ՝ մատուցման պատարագին հպատակեն։" Ամենեւին։ Քահանայն խորհրդակատար եւ իր պաշտօնեաներն արդէն յիշուած են, ինչպէս ըսինք. ի՞նչ անոր վրայ ժողովուրդը յիշէ, անկէ ետքը նորէն ինք զինք յիշէ։ Եպիսկոպոսը, զինքը, պաշտօնակիցները՝ ուստի կերպի յիշատակութիւնը գոյացած՝ ժողովրդեանը կը սկսի, եւ ժողովրդականաց մէջ կը մասնաւորէ՝ պատարագիս տուողը կամ տուողները (վասն զի եզ. ալ, յգ. ալ կրնայ առնուիլ՝ "մատուցողս") որուն կամ որոնց դիտման ի մասնաւորի պատարագը կը մատուցուի. ետքէն եկեղեցւոյ պտղաբերները, ետքէն ընդհանուր ողորմածութիւն ընողները կը յիշէ։

*զպարտս հայցմանց նոցա ըստ ընդարձակ առատութեանդ քո հարիւրապատիկ առատ եւ ի հանդերձելումն։*[111]

*Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ աւրհնեա զհոգիս հանգուցելոցն։*[112]

*Յիշեա, Տէր, եւ զայնոսիկ՝ որք յանձնեցին մեզ զինքեանս ի յաղաւթել,*[113] *եւ կառավարեա զկամս հայցմանց նոցա եւ զմեզ ընդ ուղղոյն եւ որ լին է փրկութեամբ, եւ վարձատրեա բոլորեցունց զանանց եւ զերանելի բարութիւնսն.*[114] *զտեսալ զխորհուրդս մեր՝*[115] *տաճարացո յընդունակութիւն*[116]

---

զպտղաբերիչս եկեղեցւոյ քում սրբոյ՝ որք յիշեն (M եւ որք յիշեն) զաղքատս ողորմածութեամբ, եւ հատո (N նոցա) զպարտս նոցա ըստ ընդարձակ առատութեան քում (— CW ալ “առատութեանդ քոյ —) հարիւրապատիկ„ ենն։ ||[174] Այս տողին տեղ MN “Յիշեա Տէր եւ ողորմեա եւ գթա ի հոգիս հանգուցելոցն. դատաւորեա (M դատեա) զնոսա այցելութեամբ ի լոյս երեսաց քոց ընդ սուրբս քո, եւ արժանաւորեա (M արժանի արա) ողորմութեանդ քո„ (M “քում։„) ||[175] MN “...յանձնեցին մեզ զինքեանս յիշատակել յաղօթս՝ զկենդանիս եւ զհանգուցեալս„ ենն։ ||[176] W “...ընդ ուղղոյն եւ որ լին է փրկութեամբ. վարձատրեա„ ենն։ ||[177] M “բոլորեցունցս։„ ||[178] MN “զբարութիւնսդ. եւ զտեսալ„ ենն։ W “զտեսալ զխորհուրդս մեր, որբեալ է խղճէ եւ ի չար գործոց, տա-

111 Աւանդ. հոս ստուգիւ զեղչուած բնագիր մըն է՝ զորն որ առջեւնիս կը դնէ Անձեւացեաց եպիսկոպոսը. այսինքն ողորմածութիւն բնգնեբուն եւ հոգւոց հանգուցելոց յիշատակներուն մէջ շատ յիշատակներ թողուած են՝ որոնք, համեմատութեամբ նախընթացներուն, քիչ շատ յայտնի են թէ ո՛ր կարգի անձանց եւ իրաց վրայ կը դառնան։ Նախընթացները եւ հետեւորդ յիշելեաց վերջաբանը կը ցուցնեն որ շատ փոքր չէ աս վէհը. անանկ որ մեր Բ., Գ. եւ Դ. պատարագներուն յիշելեաց ընդարձակութիւնն ունեցած է աս պատարագն ալ, եւ այսպէս բոլոր պատարագը, եթէ ոչ նախընթաց չորսին, երկու վերջիններուն կատարեալ համաչափ է։

112 (Յիշեա . . .) “զհոգիս հանգուցելոցն։„ — Աս ննջեցելոց ընդհանուր յիշատակը ճշդիւ հոս անմիջապէս Յիշատակաց վերջաբանին նախընթաց՝ համաձայն է Գ. պատարագին կարգին. թէպէտ աստ մէջ խօսքերը ճոխագոյն են, իսկ առաջիկայ պատարագին մէջ շատ կարճ. անոր համար ալ Լամբր. կ'աւելցնէ՝ “դատաւորեա զնոսա այցելութեամբ ի լոյս երեսաց քոց ընդ սուրբս քո, եւ արժանաւորեա ողորմութեան քո։„ իսկ Հասարակ Ընթերցուածն աս ալ առած ընդարձակած է՝ ամբողջ հատուած մ'ալ ձեւացընելով այսպէս՝

“Յիշեա, Տէր, եւ ողորմեա եւ գթա ի հոգիս հանգուցելոցն, հանգո զնոսին եւ լուսաւորեա, եւ դատաւորեա ընդ սուրբս քո յարքայութեանդ երկնից, եւ արժանի արա ողորմութեան քում։„

“Յիշեա, Տէր, եւ զհոգի ծառայի քո Ա. Ա. եւ ողորմեա նմա ըստ մեծի ողորմութեան քում, եւ հանգո այցելութեամբ ի լոյս երեսաց քոց, եւ (եթէ կենդանի է) փրկեա զնա յամենայն որոգայթից հոգւոյ եւ մարմնոյ։„

Քիչ մը անընական գիրքի մէջ կ'երեւայ “արժանի արա (կամ “արժանաւորեա„) ողորմութեան քում„ (կամ “քո„) խօսքը։

113 “Որք յանձնեցին մեզ զինքեանս յաղօթել.„ որուն կը համաձայնի Լամբր. ալ, բայց կը պակսի “զինքեանս„ Հասարակ Ընթերցուածոյն, ինչպէս նաեւ Լամբր. մեկնութեան կարգի մէջ՝ ուր կը կարդայ “որք յանձն առարին մեզ յիշատակել։„ Խոսրովու “յաղօթել„ բառին տեղ՝ թէ Լամբր. եւ թէ Հասարակ Ընթերցուածը՝ “յիշատակել յաղօթս զկենդանիս եւ զմեռեալս։„

114 “(Վարձատրեա . . . զերանելի) բարութիւնսն.„ — Լամբր. “զբարութիւնսդ„. Հասարակ Ընթերցուած՝ “բարութիւնդ։„

115 “Զտեսալ զխորհուրդս մեր՝ տաճարացո„ ենն։ Խոսրովայ հասարակ Օրինակները, նաեւ Վենետկոյ 1336ինը, համաձայն Լամբրոնացւոյն եւ Հասարակ Ընթերցուածոյն, կը կարդան՝ “զտեսալ զխորհուրդս մեր։„ Բայց անակնկալ կերպով մը Վիեննայի Մատենադարանին (բաւական ընտիր ընթերցուած ունեցող) Օրինակը կը կարդայ՝ “որբեալ ի խղճէ եւ ի չար գործոց.„ — սակայն կրնայ կասկածուիլ հարազատութեան վրայ. գրեթէ նոյն ըլլալով այն նախադասութիւնը ժամագրոց մէջ գիշերային ժամուն առաջին Քարո-

մարմնոյ եւ արեան Միածնիդ քոյ Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հայր ամենակալդ հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։ — Ժողովուրդն. Ամէն։

Ժ. — Քարոզէ սարկաւագն.[117] Քեզ Հայր ամենակալդ գոհութիւն եւ փառաբանութիւն մատուցանեմք վասն սուրբ, անմահ, աստուածային[118] պատարագիս՝ որ ի վերայ սրբոյ սեղանոյս։ Զսա[119] մեզ ի փրկութիւն եւ ի կենդանութիւն[120] պարգեւեա։[121] Սովաւ շնորհեա զսէր, զհաստատութիւն եւ զբաղձալի զխաղաղութիւն[122] եկեղեցւոյ քում սրբոյ, եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց, եպիսկոպոսապետին[123] մերոյ եւ քահանայից՝ որ զպատարագս մատուցանէ։

ճարացս„ եւն։ — CW եւ M "յընդունակութիւն„, իսկ N "(տաճարացս) ընդունելութեան„ եւն։ ||179—80 MN "Միածնի քո Տեառն մերոյ եւ փրկչի Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հօր միանգամայն եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ„ եւն։ ||182 "Ժողովուրդն. Ամէն„ ունին MN, իսկ Խոսրով (C) "...յաւիտեանս յաւիտենից. ամէն.„ W վերջաւորութիւնս չէ օրինակած։ — Ասկէ ետքը MN "Քահ. Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ„ եւն։

Ժ. ||183 Խոսրով պարզապէս "Քարոզ։„ Ամբողջ այս հատուածը չունին հոս Լամբրոնեանք (MN) այլ շատ աւելի յառաջ (տես տպ. էջ 219 եւ վարն ի կարգին). իսկ հոս սարկաւագ ուրիշ քարոզութիւն մ'ունին՝ "Ամենայն սրբով„ եւն. (տես տպ. էջ 220։) ||188 W "եպիսկոպոսապետին մերոյ... եւ քահանայից„ եւն, երեք կէտերով նշանակելով անուան տեղը։ MN "եպիսկոպոսապետին մերոյ եւ եպիսկոպոսիս մերոյ„ եւն։ ||190 CW "զմատուցօղս„։

ղութեան մէջ բռնածին՝ "սրբելով զանձինս մեր ի խղճէ եւ ի չար գործոց։„

116 "Տաճարացս յընդունակութիւն։„ — Այսպէս Հասարակ Ընթերցուածն ալ. սակայն Լամբր. Պատարագին մէջ "ընդունելութեան,„ իսկ Մեկնութեան կարգին մէջ՝ "յընդունակութիւն։„ Արդեօք "յընդունելութիւն„ նախնական եւ հարազատ համարուիլ, ըստ որում Մանդակունին ալ նման խօսք մ'ունի։

117 "Քարոզէ սարկաւագն. Քեզ... գոհութիւն եւ փառաբանութիւն մատուցանեմք...։„ — Երրորդ քարոզութիւն մը՝ որուն երկու համապատասխանողները նոյն գրքին մէջ նախընթաց պատարագներուն մէջ տեսանք (տես, էջ 150, 234 եւն) մի եւ նոյն շարունակութեամբ եւ երեք գլխաւոր բաժանմամբ, խօսքերով միայն տարբեր։ Մտադրութեան արժանի է հոս որ սա քարոզութիւնը, թէպէտ սարկաւագին բերանը, աղօթքի ձեւ ունի։ Լամբրոնացւոյն, անկէ ալ Հասարակ Ընթերցուածոյն մէջ, Խոսրովայ բնագրին նայելով, բաւական փոփոխութիւնք եղած են։

— Լամբրոնացւոյ քով սկիզբը՝ "Եւ եւս գոհ. եւ փառաբ. մատուցանեմք Տեառն Աստուծոյ մերոյ վասն...։„ — Հասարակ Ընթերցուած՝ "Գոհ. եւ փառաբ. մատուցանեմք քեզ Տ. Ա. մ. վասն։„

118 (Անմահ) "աստուածային„ (պատարագիս)։ — Չիք "աստուածային„ առ Լամբր. եւ Հասարակ Ընթերցուածոյն։

119 "(Սեղանոյս)։ Զսա„...։ — Կ'աւելցնէ Լամբր. "(սեղանոյս) դէ զսա։„ Այնպէս Հասարակ Ընթերցուածը։

120 "Ի փրկութիւն եւ ի կենդանութիւն.„ — Լամբր. "ի սրբութիւն կենդանութեան։„ Այնպէս Հասարակ Ընթերցուածը։

121 "Պարգեւեա.„ — Լամբր. "պարգեւեսցէ։„ — Հասարակ Ընթերցուած՝ "պարգեւեսցես։„

122 "Զխաղաղութիւն եկեղեցւոյ։„ — Կ'աւելցնէ Լամբր. (զխաղաղութիւն) "ամենայն աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ եւ ամենայն եպիսկոպոսաց։„ Այնպէս Հասարակ Ընթերցուածը։

123 "Սրբոյ եպիսկոպոսապետին մերոյ։„ — Լամբր. "եպիսկոպոսապետին մերոյ եւ եպիսկոպոսիս մերոյ„ եւն։ Վերջապէս նոյնը կ'աւելցնէ "եղիցի յիշատակ.„ այսպէս կրճատուած։ Ամենեքին չունին երեք յաջորդ ստուգիւ հարազատ տարբերութիւնները՝ զորոնք Խոսրովայ քով կը կարդանք։ Անոնց տեղ եկած են սա նոր յաւելուածք՝ "Եւ

Վասն որոյ, Տէր, զմատուցողս անմոռաց գթութեամբդ քո յիշեա։[124]
Յիշեա, Տէր, զհոգիս հանգուցելոցն ի քեզ յուսացելոց։ Քո, Տէր, զաւրութեամբ եւ անմահ պատարագաւս կեցո, եւ ողորմեա մեզ։

ԺԸ. — Քահանայն. Աստուած[125] ճշմարտութեան եւ Հայր ողորմութեան, գոհանամք զքէն, որ ի վեր քան զերանելի նահապետացն զմեր պարտաւորեալս (կարդա՝ զպարտաւորեալս) առաւել մեծացուցեր[126] զբնութիւն. քանզի[127] նոցա Աստուած կոչեցար, իսկ մեզ Հայր հաճեցար անուանիլ գթալով։ Եւ այժմ[128] զայսպիսի զառ ի քէն զնորոգ[129] եւ զպատուական անուանադրութեան շնորհս՝[130] պայծառացեալ[131] աւր ըստ աւրէ ծաղկեցո յեկեղեցւոջ քում.[132] եւ տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր, կարդալ առ քեզ, Հայր երկնաւոր, եւ ասել.[133]

---

ԺԱ. ‖193 Խոսրով միայն "Աղօթք" խորագիրն ունի։ ‖195 Թէ՛ Խոսրով (CW) եւ թէ Լամբրոնեանք (MN) "Օժտեցեր" (փխ "մեծացուցեր" որ վերը գրուած է։) ‖197 Այս "գթալով" պահուած է հօս Լամբրոնեանց (MN) համեմատ. Խոսրով բուն բնաբանին մէջ չի դներ այս բառն, բայց Մեկնութեան մէջ այսպէս կը մեկնէ "զի քան զորբոցն՝ զմեր բնութիւնս զպարտաւորեալս ի մեղս՝ առաւելապէս Օժտոյ որոշէր գթալով։" — MN "Եւ այժմ, Տէր աղաչեմք զքեզ, զայսպիսի առ ի քէն պատուական եւ զնորոգ անուանադրութեանս շնորհս" եւն։ ‖198 N "...օրըստօրէ պայծառացեալ ծաղկեցոյ ի մէջ եկեղեցւոյ քո." M "հանապազ պայծառացեալ ծաղկեցոյ աւր ըստ աւրէ ի մէջ սուրբ եկեղեցւոյ քո։" ‖200 MN հօս "բանալ զբերանս մեր, երգել եւ ասել։"

վասն փրկութեան եւ զօրութեան թագաւորաց քրիստոնէից եւ իշխանին մերոյ (որն որ դեռ անտուն թագաւոր պսակուած չէր)։ Ազատութիւն եղբարց մերոց գերելոց եւ շնորհ առաջիկայ ժողովրդեանս, հանգիստ հաւատով ի Քրիստոս ննջեցելոցն։" — Իսկ Հասարակ Ընթերցուածոյնը տես վարը՝ իրեն տեղը։

124 "Վասն որոյ, Տէր... գթութեամբդ քո յիշեա։" — Կը գուշակենք աղաւաղութիւն մը. արդեօք սո՞նկ կարդալու է՝ "Վասն որոյ, Տէր, մատուցանի՝ անմոռաց գթութեամբդ քո յիշեա։"

125 "Աստուած ճշմարտութեան եւ Հայր ողորմութեան...։" — Այս աղօթքին նախընթաց իրեն համապատասխանող աղօթքներուն հետ ունեցած իմաստից աղերսակցութիւնը խորհրդածած ենք. (տես էջ 265, ծան. 38)։ Բանասիրօրէն Անձեւացեաց եպիսկոպոսին մեզի ընծայած բնագիրը յայսմ զարմանալի ծառայութիւն մը կ'ընէ վերածելով հայ բնագիրն իր նախնական բաւական ընտիր ճաշակին՝ դարերուն, մանաւանդ քիչ առաջ քիմքերուն համեմատ, մուծուած մանր, բայց բազմաթիւ խառնուրդներէն սրբելով։ Աստուածային պաշտամանց մէջ, ինչպէս ըսած ենք, ստուգիւ ոչինչ չէ պերճութիւնն ալ։

126 "Մեծացուցեր զբնութիւն։" — Լամբր. միայն՝ "մեծարեցեր զբնութիւնս," գուցէ լաւագոյն եւ հարազատ։ Հասարակ Ընթերցուածն ալ "մեծարեցեր։" Լաւագոյն եւ հարազատ կը հնչէ Լամբր. բոլոր հատուածը Մեկնութեան կարգին մէջ՝ էջ 447 "զմեր զպարտաւորեալս մեծարեցեր զբնութիւնս։"

127 "Քանզի." — Լամբր. եւ Հասարակ Ընթերցուած "վասն զի։"

128 "Այժմ զայսպիսի." — Լամբր. եւ Հասարակ Ընթերցուածն ունին աւելի՝ "այժմ, Տէր, աղաչեմք զքեզ, զայսպիսի։"

— Լամբր. միայն՝ ("զայսպիսի) պատուական եւ զնորոգ։"

129 "Զառ ի քէն." — Լամբր. եւ Հասարակ Ընթերցուած "առ ի քէն։"

130 "Անուանադրութեան շնորհս." — Լամբր. եւ Հասարակ Ընթերցուած "անուանադրութեանս շնորհս."

131 "Պայծառացեալ օր ըստ օրէ։" — Հասարակ Ընթերցուածն եւ Լամբր. Մեկնութեան կարգին մէջ "օր ըստ օրէ պայծառացուցեալ։" Լամբր. Պատարագին մէջ "օրըստօրէ պայծառացեալ։"

132 "Յեկեղեցւոջ քում." Լամբր. Պա-

## ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂԱՒԹՔ

*Հայր մեր, որ յերկինս։*[134]

[*Ժողովուրդն. Սուրբ եղիցի...։*]

*Քահանայն. Տէր տերանց,*[135] *Աստուած աստուծոց, Հայր երկնաւոր, մի տար զմեզ ի փորձութիւն եւ մի ի դատապարտութիւն, այլ փրկեա ի չարէ, ապրեցո ի փորձութենէ. զի քո է զաւրութիւն, տէրութիւն,*[136] *եւ արքայութիւն, եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։*

*Ժողովուրդն. Ամէն։*

---

‖202–8 «Հայր մեր» առանց որեւէ խրատագրի եւ բաժանման կը մեկնէ Խոսրով, առանց նաեւ նշանակելու թէ քահանայն թէ ժողովուրդը կ'ըսէ։ Լամբրոնեանք (MN) ի հարկէ ժողովրդեան կու տան ամբողջը, եւ միայն «Զի քո է արքայութիւն» եւն՝ քահանային ի ձայն։ ‖204–209 Այս աղօթքը («Տէր տերանց»), զոր ունին նաեւ մեր Ամփոփական Պատարագը, չունի հոս N (տես էջ 221), բայց ունի M ձեռագրին՝ Խոսրովայ (CW) հետ, թէեւ բաւական տարբեր՝ «Տէր տերանց, Աստուած աստուծոց, Թագաւոր յաւիտենից, արարիչ ամենայն արարածոց, Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. մի տար զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէ» եւն։ ‖206 Միայն W «փէր—ջէ—ն.» չունին ոչ Վենետիկոյ Խոսրով (C) եւ ոչ ալ M. իսկ «զի» (քո է, եւն) ունի միայն M, Խոսրով ներգործութեամբ չէ օրինակած։ — Նոյնպէս «Ժողովուրդն. Ամէն» ներգործութեամբ չեն գրած ոչ Խոսրով եւ ոչ Լամբրոնեանք։ Վերջիններս ասկէ ետքը ունին՝ «Քահ. Խաղաղութիւն ամենեցուն։ Ժող. Եւ հոգւոյդ (M հոգւոյ) քում։ Սարկ. Աստուծոյ երկրպագեցուք։ Ժող. Առաջի քո Տէր։» Այս յաւելուածն աւելցուցած են նաեւ Խոսրովայ «Նոր օրինակքն» (տես առ. էջ 54, ծան. 1։)

տարագին մէջ «ի մէջ եկեղեցւոյ քո.» Մեկնութեան կարգին մէջ «ի մէջ սուրբ եկեղ.։» Հասարակ Ընթերցուածը «ի մէջ եկեղեցւոյ քում սրբոյ։»

133 «Կարդալ առ քեզ, Հայր երկնաւոր, եւ տալ։» — Հասարակ Ընթերցուածն՝ «կարդալ զքեզ երկնաւոր Հայր, երգել եւ տալ.» Լամբր. միայն «երգել եւ տալ» չունելով՝ «կարդալ զքեզ երկնաւոր Հայր»։ Ցայտնի կը տեսնուի որ աս տարբերութեանց մէջ Հասարակ Ընթերցուածը Լամբրոնացւոյն եւ Խոսրովեան բնագրին խառնուրդն է։

134 «Հայր մեր, որ յերկինս։» — Բացայայտ է Անձեւացեաց եպիսկոպոսին գրութենէն որ քահանայն ինքը կը զրուցէր «Հայր մեր, որ յերկինս.» մնացածը ժողովրդեան թող տալով որ կցէ. այսչափ տեւեր է ան ասորական սովորութիւնը. տես էջ 152, ծան. 125։ Սակայն Լամբրոնացւոյն քով յանկանը մնած կամ սկսած է որ ամբողջը ժողովրդեան թող տրուի։

135 «Տէր տերանց, Աստուած աստուծոց, Հայր երկնաւոր, մի տար...։» — Լամբրոն. Պատարագին մէջ չենք տեսներ իրօք գրուած մեր պատարագին միջարկութիւնք (embolismus), չենք գիտեր՝ ինչու. սակայն Մեկնութեան կարգին մէջ (էջ 466) նոյնն ամբողջ յառաջ կը բերէ։ Թէ՛ աս թէ՛ Հասարակ Ընթերցուածոյնը բաւական մաքուր եւ անխառն կը հնչէ, մանաւանդ նոյնը Մանաքեան Օրինակին հնագոյն մասին նայելով, (վասն զի կրկին տարբեր ժամանակներու Ձեռագիրք իրարու կը յաջորդեն հոն,) ուղղելէն ետքը՝ այսինքն «յաւիտենականը» կարդալով «յաւիտենից» (ինչպէս Լամբրոնացին ալ ունի), «մի տար զմեզ ի փորձութիւն» խօսքէն ետքը աւելցնելով «եւ մի ի դատապարտութիւն» (ինչպէս Լամբր. ալ ունի), եւ կարդալով «ի չարէն» (չէ թէ «ի չարէ,» ինչպէս սխալ սովորութիւն եղած է թէ՛ հոս եւ թէ՛ Տէրունական աղօթքին մէջ), եւ վերջապէս ջնջելով խօսքին ջիղը կտրող «եւ» զօդն «ապրեցո»էն յառաջ։ Աս բաներն արդէն Խոսրովեան բնագիրն ալ կ'ենթադրէ ուղղել։ Իսկ մնացեալ տարբերութեանց նկատմամբ՝ որոնք Խոսրովու քով կը գտնուին, կը կարծենք որ մեր Հասարակ Օրինակին մէջինը մեր նախընթաց պատարագներուն մէկէն առնելով հոս բերուած միջարկութիւն մըն է։

136 «Տէրութիւն» Վիեննայի Օրինակէն։

137 «Որ աղբիւրդ ես կենաց...։» — Ցայտնի

## ԽՈՆԱՐՀՄԱՆ ԱՂԱՒԹՔ

ԺԲ. — Քահանայն.[137] Որ աղբիւրդ ես կենաց եւ փրկութեան[138] եւ բղխումն ողորմութեան,[139] ողորմեա ժողովրդեանս՝ որ խոնարհեալ երկիր պագանէ աստուածութեանդ քո. եւ պահեա[140] զսոսա ամբողջս. տպաւորեա յոգւոջ սոցա զձեւ մարմնոյ ցուցակի[141] առ ի ժառանգութիւն եւ ի վիճակ հանդերձելոց բարեացն Քրիստոսիւ Յիսուսիւ Տերամբ մերով, ընդ որում քեզ Հոգւոյդ սրբոյ եւ Հաւր ամենակալի վայելեն փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

---

ԺԲ. ||211 Խոսրով պարզապէս "Աղօթք" խորագիրն ունի հոս: ||212 Միայն N ("բղխումն ողորմութեան,) Հոգիդ սուրբ, ողորմեա" եւն: ||213 M "երկիրպագանեն առաջի աստուածութեան քո." N "երկիրպագանեն առաջի ահաւոր աստուածութեանդ քո." (իսկ W = C, բայց "աստուածութեանդ քոյ:") — "Պահեա" ունի միայն M, միւսները՝ թէ Խոսրով (CW) եւ թէ Լամբրոնացի (N) "պահպանեա զսոսա ամբողջս": ||215 MN "հանդերձելոց բարեաց:" ||216 "Վայելեն" ոչ M եւ ոչ N ունի, որով խօսքն առանց բայի է հոն: ||218

է որ առ աղօթքին անմիջապէս նախընթաց՝ համաձայն Լամբրոնացւոյն եւ ամէն Հասարակ ընթերցուածոյ մատեաններուն, Խոսրով ալ ունեցած է՝

"ՔՀՆ. Խաղաղութիւն ամեն.:
ԺՈՂ. Եւ հոգւոյդ քում:
ՍՐԿ. Աստուծոյ երկրպագեսցուք:
ԺՈՂ. Առաջի քո, Տէր:"

Բայց նոր մեկնութեան պէտք չունենալով՝ յառաջ բերած չէ: Նոյն իսկ առաջիկայ աղօթքը Գլխոնարհութեան (κεφολοκλισίας) աղօթք է:

138 "(Կենաց) եւ փրկութեան." — "եւ փրկութեան" կը պակսի Լամբրոնացւոյն եւ Հասարակ Ընթերցուածոյն:

139 "Բղխումն ողորմութեան, ողորմեա": — Հոս Խոսրովայ բնագիրը մեր Հասարակ Ընթերցուածոյն, եւ նաեւ Լամբրոնացւոյն "Հոգիդ սուրբ" չունի: Ոչ երբեք գրչագրի մը անտեսութիւն կրնայ ըլլալ ասիկայ, վասն զի բոլոր ձեռագիր մատեանք այսպէս են: Եւ ոչ սկզբնական գրողին "Սահակայ որդւոյ Խոսրովու" կրնանք նոյն մոռացութիւնը վերածել. վասն զի Մանաքանի ձեռագրին հնագոյն մասին մէջ ալ նոյն աղօթքը առանց առոր կը կարդանք: Ո՞վ կրնայ ըսել որ առ մատենին մէջ մեր պատարագը ԺԳ. դարուն ընդօրինակողը՝ Խոսրովու Մեկնութեան գրքին մէջէն պատարագի բնագիր ժողված ըլլայ՝ մեզի պէս: Աղօթքին ներքին կազմութեան ալ նայելով՝ չունինք պատճառ՝ երկուքէն ալ, այսինքն Անձեւացեաց եպիսկոպոսէն եւ Մանաքանեան ձեռագրին սկզբնագիր Օրինակէն ալ առաջ զանցառութիւն մը ենթադրելու. չէ թէ մինակ աղօթքին վերջերէն որոշ է ո՛ր անձին ուղղուած ըլլալը, հապա նոյն իսկ անոր սկիզբը գործածուած բառք եւ կոչմունք անմիջապէս Հոգւոյն սրբոյ անունը կը պահանջեն ըսելու եւ լսելու, մանաւորապէս "բղխման" ձայնը: Ո՞վ կը տարակուսի որ հարիւրաւոր տարիներ ետքն ասկէ գացած չէ Ապաշխարութեան Թագաւորաց (Հինգշ. Թ. Աղ.) մէջ "Աղբիւր կենաց եւ բղխումն ողորմութեան:" Մեզի կերեւայ որ ինք Լամբր. առաջին անգամ իր Պատարագին մէջ մուծած է ներգործութեամբ "Հոգիդ սուրբ", անանկ որ ինք իսկ դեռ ի կարգի Մեկնութեան յառաջ բերած բնագրին մէջ չունի. եւ ան ալ հոն, ինչպէս ըսինք, աղօթքին սկզբնաւորութեան խօսքովը արդէն ամենասուրբ Երրորդութեան երրորդ անձը նշանակուած կը դնէ, երբ որ կ'ըսէ հոն՝ "Աղբիւր կենաց միշտ զՀոգին սուրբ Գիրք սուրբք անուանեն, ըստ որում ասէ Տէր վասն նորին՝ Որ հաւատայ յիս, գետք յորովայնէ նորա բխեսցեն ջրոց կենդանութեան. եւ մարգարէքն ի բազում տեղիս. ուստի մեզ առաջի կայ քննել զպատճառն՝ որոյ աղագաւ նա աղբիւր եւ գետ ի Գիրս կոչեցաւ:"

140 "Պահեա (զսոսա ամբողջս)". — Լամբրոնացւոյ քով "պահպանեա" եղած:

141 "Տպաւորեա յոգւոջ սոցա զձեւ մարմնոյ ցուցակի" Լամբր. կը մեկնէ անանկ. "Սոցա (խոնարհած) մարմնոյն ցուցուցած ձեւը՝ հոգւոյս վրայ տպաւորէ. ("մարմնոյն պարանոցի կորացումն՝ ներգործութեան հոգւոյն պարտ է զի լիցի բացայայտիչ:")

*Ժողովուրդն.* Ամէն։

*Ժ.Գ..* — [*Սարկաւագն.* Պռաւսխումէ։[142]

*Քահանայն.* Սրբութիւնք սրբոց վայելեն։[143] 220

Հայր սուրբ, Որդի սուրբ, Հոգի սուրբ։[144]]

---

*Ժողովուրդն.* Ամէն„ պատասխանն ոչ Խոսրով (CW) եւ ոչ Լամբրոնեանք (MN) դրած են հոս ներգործութեամբ։

*Ժ.Գ.* ‖219–221 Ամբողջ այս հատածին մէջ նշանակուածը չունի Խոսրով՝ հին ձեռագիրն եւ նաեւ մեր ձեռագիրն (CW)։ Հրատարակիչը կը ծանուցանէ որ Խոսրովայ "Նոր օրինակք„ հոս ալ աւելցուցած են հետեւեալներն՝ ըստ Լամբրոնեանին եւ մեր Սովորական օրինակին (տես C տպ. էջ 55—6, Ծան. 1։) Այս յաւելուածն է՝ "Սարկաւագն բարձր բարբառով ասէ. Պռօսխումէ։ Քահանայն բարձրացուցանէ զընծայն ի վեր սակաւ գլխովն եւ ասէ. Ի սրբութիւն սրբոց։ Դպիրքն միաձայն աղաղակեն. Միայն սուրբ, միայն Տէր, Յիսուս Քրիստոս, ի փառս Աստուծոյ Հօր. ամէն։ Քահանայն ունելով զնոյն յերկուսին ի ձեռն, եւ ասէ. Օրհնեալ Հայր սուրբ Աստուած ճշմարիտ։ Դպիրքն ասէ. Ամէն։ — Աւրհնեալ Որդին սուրբ Աստուած ճշմարիտ։ Դպիրն. Ամէն։ — Աւրհնեալ Հոգին սուրբ Աստուած ճշմարիտ։ Դպիրքն։ Ամէն։ — Աւրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն։ Քահանայն դարձեալ խոնարհի, աղօթէ եւ ասէ. Նայեաց, Տէր մեր Յիսուս Քրիստոս, յերկնից ի սրբութենէ քումմէ եւ յաթոռոյ փառաց թագաւորութեան քո։ Եկ ի սրբել եւ կեցուցանել զմեզ, որ ընդ Հօր նստիս եւ աստ պատարագիս։ Արժանի արա տալ մեզ յանարատ մարմնոյ քումմէ եւ ի պատուական յարենէ, եւ ի ձեռն մեր՝ ամենայն ժողովրդեանն։ Եւ զայս ասացեալ՝ երկրպագէ զոհիւն (այսպէս, MN "երկրպագէ եւ համբուրէ զսեղանն„), եւ առեալ զսուրբ մարմինն ողջ թանայ յանապական արիւնն, եւ բարձրացուցանէ յանդիման ժողովրդեանն, եւ ասէ„ եւն։ Այս յաւելուածներն՝ աննշան տարբերութեամբ՝ ունին նաեւ Լամբրոնեանք (MN) եւ Սովորականը։

---

142 "Պռաւսխումէ։„ — Աս անուղղակի առ Հայս եկած յունական բացագանչութիւնը, երբեմն "Պրաւսխումէ„ կարդացուած (ի Խոսրովայ) եւ երբեմն "Պրաւսխուսմէն„ (ի Լամբրոնացւոյն). տես աւսր վրայ էջ 154, Ծան. 133։ Խոսրովու քով հոս ներգործութեամբ նշանակուած չենք տեսներ, վասն զի ուրիշ տեղ մեկնած է աս ձայնը։

143 "Սրբութիւնք սրբոց վայելեն։„ — Աս՝ ամէն արեւելեան պատարագաց, ամենեւին աւանդ բացառութեամբ, ունեցած յարգելի τὰ ἅγια τοῖς ἁγίοις — Sancta Sanctis, որն որ Խոսրովու քով դեռ նախնաբար Հայոց սովորական ձեւովը պահպանուած է՝ "Սրբութիւնք սրբոց վայելեն„ (տես աս ձայնին վրայ՝ էջ 154), աստիճանաբար հիմնկուած ապաւաղութեան եկած է։ Լամբր. իր Պատարագին մէջ կը կարդայ "Սրբութիւն սրբոց,„ ոչ աւելի ոչ պակաս. իսկ Մեկնութեան կարգին մէջ կը կարդայ "Ի Սրբութիւնս սրբոց,„ հիմնկուած Հատարակ Ընթերցուածը՝ երկուքին գոցցեր խառնուրդ՝ "Ի սրբութիւն սրբոց։„ Իբրեւ թէ Պռաւսխումէնին հետ (որն որ կը նշանակէ "Նայեցուք„) կը կապէ Տարօնի արքեպիսկոպոսը "ի սրբութիւնս„ ըսելով։

144 "Հայր սուրբ, Որդի սուրբ, Հոգի սուրբ.„ — Խոսրով հոս այսչափ է, ոչ աւելի ոչ պակաս։ "Քանզի սուրբ միածնայնութեամբ թէ "Սրբութիւնք սրբոց վայելեն„, եւ յայտնեաց որպիսիք սրբութիւնքն ,,յասելն՝ Հայր սուրբ, Որդի սուրբ, Հոգի սուրբ։,, Տարակոյս չկայ որ անցողակի մը կը յիշէ աս մասն Անձեւացեաց եպիսկոպոսը. սակայն մեզի կ'երեւայ որ քահանային կողմանէ զբուցուելիքն ամբողջ յառաջ բերած է, ժողովրդեանը միայն թող տալով, անանկ որ իր բնաբանին մէջ գրեթէ միայն սանկ ունեցած պիտ'որ ըլլայ՝

"Քահանայն. Սրբութիւնք սրբոց վայելեն։

Ժողովուրդն. Միայն սուրբ, միայն Տէր Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հօր։

Քահանայն. Հայր սուրբ։

Ժողովուրդն. Ամէն։

Քահանայն. Որդի սուրբ։

Ժողովուրդն. Ամէն։

Քահանայն. Հոգի սուրբ։

Ժողովուրդն. Ամէն։ Օրհնութիւն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ։„

Հիմնկուած Հատարակ Ընթերցուածոյն մէջ՝ հին "Հայր սուրբ, Որդի սուրբ„ եւն քահանային բերնէն զպրաց բերան դրուած է։ Անոր

## ՆԱԽԱՀԱՂՈՐԴԱԿԱՆ ԱՂԱՒԹՔ

ԺԳ. — *Քահանայն. Հայր սուրբ,*[145] *որ կոչեցեր զմեզ յանուն Միածնի Որդւոյ քո քրիստոնեայս, և շնորհեցեր մեզ մկրտութիւն հոգևոր աւազանաւն ի թողութիւն մեղաց.*[146] *սրա և*[147] *այժմ արժանի ընդունել զհաղորդութիւնս զայս*[148] *ի մեղաց թողութիւն, և յամենայնի անդադար փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։*

*Ժողովուրդն.* Ամէն։

[*Քահանայն.* Ի սուրբ[149] պատուական մարմնոյ և յարենէ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի՝ որ բաշխի ի միջի մերում։ Սա է կեանք, յոյս յարութեան[150] և քաւութիւն և թողութիւն մեղաց մերոց։

---

ԺԳ. ‖223–228 Այս աղօթքը („Հայր սուրբ.) եւն, զոր ունի նաեւ Սովորական Պատարագը, չունին հոս Լամբրոնեանք (MN.) ‖224 թէ C թէ W „յանուն... Որդւոյ քո" եւն։ ‖229 Այս „Ժողովուրդն Ամէն" ներգործութեամբ հոս չեն գրեր ոչ Խոսրով եւ ոչ Լամբրոնեանք։ ‖230 եւն փակագծեալը կայ Խոսրովայ քով ալ (C եւ W), իսկ Լամբրոնեան Օրինակին մէջ (MN) ի հարկէ շատ աւելի ճոխացած։ — „Ի սուրբ" մէկ անգամ ունին C եւ W, բայց փոխարէն նոյն կցուրդը նոր յաւելուածով զարդարուած քահանային տրուած կ'երեւայ իբրեւ „Օրհնեալ Հ. ս. Աստուած ճշմարիտ — Օրհնեալ Ո. ս. Աստուած ճշմարիտ" եւայլն, եւ ամենէն ետքը՝ „Օրհնութիւն եւ փառք Հ." եւն։ Որո՞ւն միտքը չ'իյնար Ը դարուն սկիզբներէն Վահանայ Գողթան Տեառն աղօթքին միջինը (Վկայաբանութիւն, Սոփերք, ԺԳ. էջ 38) „Ի՛մ Յիսուս, փրկութիւնարար աշխարհի, եւ Հօր եւ Հոգւոյդ սրբոյ եւ քո իսկ կամաւորութեամբ՝ մեզ եղեր զենումն, եւ առաջնորդ կենաց ճանապարհին. Հայր սուրբ եւ Որդի սուրբ եւ Հոգիդ սուրբ, որ մի խոստովանութիւնս, Երրորդութիւն եւ մի աստուածութիւն... սրբում փառք յաւիտեանս. ամէն։" — Յաւելուածները մենք առաջին անգամ Լամբրոնացւոյն քով կը տեսնենք, ուրիշ յիշատակարան մը չունենալով՝ առոր եւ Խոսրովու մէջ եղած միջոցէն։ Մտադրութեան արժանի է որ Տարօնի եպիսկոպոսը վերյիշեալ դպրաց տրուած „Հ. ս. Ո. ս. Հ. սուրբ" եւ „Օրհնութիւն Հ. եւ Ո. եւ Հ. ս." չունի, որով հոս ալ Հասարակ Ընթերցուածն բառ իմիք հնոյն եւ Նորոյն միանգամայն երեւեցուցիչը կ'ըլլայ։ Մոնաքոնեան հնագոյն Օրինակը դեռ չէ առած Նորէն ներսան հինը՝ զորն որ կարճ հնչելուն համար ետեւէն առջեւէն երկնցուցած են ժամանակին ճաշակին համեմատ։

— Մոնաքոնեանն երեք տեղն ալ դեռ „Ճըշմարիտ Աստուած" կը կարդայ Լամբրոնացւոյն պէս, զորն որ ետքը „Աստուած ճշմարիտ" ըրած են Հասարակ Ընթերցուածոյն մէջ։

145 „Հայր սուրբ, որ կոչեցեր զմեզ...։" — Աղօթք նախ քան զճաշակումն՝ զորն որ բոլորովին թողուցած է Լամբր. թէ՛ Պատարագին մէջ եւ թէ՛ ի կարգի Մեկնութեան, անոր տեղ Բիւզանդեան պատարագէն „Նայեաց, Տէր մեր" եւն դնելով։ — Հասարակ Ընթերցուածոյն սկիզբը՝ „Տէր Աստուած մեր, որ կոչեցեր...։"

146 „(Ի թողութիւն մեղաց, սրա) եւ...։", — Հասարակ Ընթերցուածն աւելի ունի՝ („ի թողութիւն մեղաց,) եւ արժանի արարեր զմեզ հաղորդել սուրբ մարմնոյ եւ արեան Միածնի քո։"

147 „(Սրա) եւ." — աս „եւ" Վենետիկի տպագրութենէն է. մեր Մատենադարանին Օրինակը չունի։

— Հասարակ Ընթերցուածը հոս բաւական կը տարբերի. „Եւ այժմ աղաչեմք զքեզ, Տէր, սրա զմեզ արժանի։"

148 „Զհաղորդութիւնս զայս ի մեղաց թողութիւն, եւ յամենայնի անդադար փա...։" Հասարակ Ընթերցուած՝ „զսուրբ խորհուրդս զայս մեզ ի մեղաց թողութիւն, եւ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ եւ ընդ սուրբ Հոգւոյդ այժմ եւ։"

149 „Ի սուրբ պատուական." — ինչպէս Հասարակ Ընթերցուածը՝ նոյնպէս Լամբր. „ի սուրբ ի սուրբ պատուական։"

150 „Յոյս յարութեան եւ քաւութիւն։" —

*Ժողովուրդն.* Ամէն։[151]

*Քահանայն.* Սաղմոս[152] ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասացէք բարերար եւ երկնաւոր Թագաւորին՝ որ նստի ի վերայ քերովբէից. սաղմոս ասացէք եւ զփառս տուք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

*Սարկաւագն.* Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ, դպիրք, ձայնիւ քաղցրութեամբ. զի նմա իսկ վայելեն[153] սաղմոսք եւ երգք հոգեւորք։[154]

Եւ[155] եւս որք հաւատով ընկալաք (ընկալայք՞) ի սուրբ եւ յանմահ եւ յանապական եւ յաստուածային խորհրդոյս, զՏեառնէ գոհացարուք։]

---

խորհրդոյ “Նոր Օրինակը„ (տես աջ. էջ 58, ծան. 1) Լամբրոնեան Օրինակին հետ կը կրկնեն՝ “ի սուրբ, ի սուրբ„ եւն։ ‖231 W “եւ փրկչի„ եւն. MN “եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ծաղկեցաւ արքայութեամբ՝ որ իջեալ յերկնից բաշխի„ եւն։ ‖232—7 “Մերոյ„ չունի MN, իսկ յաջորդ “Ժողովուրդն. Ամէն„ ոչ խորքով (CW) եւ ոչ Լամբրոնեանք, որ վերնոյն կը կցեն քահանային տրուած՝ “Սաղմոս ասացէք Աստուծոյ մերոյ, սաղմոս ասացէք երկնաւոր Թագաւորի (N Թագաւորին) մերոյ անմահի, որ նստի ի կառս քերովբէականս։„ Մնացեալ խօսքը չունին MN. — W “ի վերայ քերոբէից„ կը գրէ։ ‖239 W “վայելէն։„ իսկ MN վերջին մասն այսպէս ունին՝ “...ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս. զի նմա իսկ վայելեն սաղմոսք, օրհնութիւնք, ալէլուք. պաշտօնեայք հանդերձ երգով սաղմոս ասացէք եւ զՏէր յերկինս օրհնեցէք։„ Անկէ ետքը չափազանց կ'առատանայ Լամբրոնեանը (տես աջ. 223—4), մանաւանդ լիակատար ունենալով “Քրիստոս պատարագեալ„ տաղը։ ‖240—241 Այս երկտողն այսպէս ունի խորքով (C եւ W), իսկ Լամբրոնեանք՝ (MN) “Եւ եւս հաւատով

---

Այսպէս Լամբր. ալ. իսկ Հասարակ աղաւաղեալ Ընթերցուածն “յայս, յարութիւն, քաւութիւն։„

151 “(Ժող.) Ամէն։„ — Աս նշանաւոր “ամէն„ը բացայայտ կը նշանակէ խորքով խորհրդածելով, զորն որ ոչ Լամբր. եւ ոչ Հասարակ Ընթերցուածն ունի։

152 “Սաղմոս ասացէք Աստուծոյ մերոյ... բարերար եւ երկնաւոր... նստի ի վերայ քերոբէից. սաղմոս ասացէք...։„ — Բազմօք այլայլեալ թէ Լամբրոնացւոյ քով եւ թէ Հասարակ Ընթերցուածոյն մէջ՝ նորացընելով։ Կը պակսի ասոնց մէջ “բարերար„, անոր տեղը ետեւէն աւելցընելով՝ “անմահի։„ “Ի վերայ քերոբէից։„ին կը փոխանակուի՝ “ի կառս քերովբէականս,„ պակսելով վերջապէս բոլոր Յիշեալը՝ զորն որ խորքովս քով կը կարդանք։

153 “(Նմա) իսկ (վայելեն,)„. — “իսկ„ չունի խորքով։

154 “Եւ երգք հոգեւորք։ Եւ եւս...։„ — Ընդարձակած է Լամբր. քով աւելցընելով “օրհնութիւնք, ալէլուք. պաշտօնեայք, հանդերձ երգով սաղմոս ասացէք, եւ զՏէր յերկինս օրհնեցէք։„ Ըստ այսմ Հասարակ Ընթերցուածն ալ։

Ասոր վրայ հարկաւ դպիրք կ'երգէին՝ մինչդեռ ժողովուրդը կը հաղորդուէր, խորքովս քով չնշանակուած, բայց Լամբրոնացիէն յառաջ բերուած, հին կցուրդները՝

“Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի մերում. Ալէլուիա։
Զմարմին իւր տայ մեզ կերակուր. Ալէլուիա։
Եւ զսուրբ (— այսպէս կը կարդայ ի կարգի Մեկնութեան —) զարիւն իւր ցօղեաց ի մեզ. Ալէլուիա։
Ճաշակեցէք եւ տեսէք, զի քաղցր է Տէր. Ալէլուիա։
Օրհնեցէք զՏէր յերկինս. Ալէլուիա։
Օրհնեցէք զնա ի բարձունս. Ալէլուիա։
Օրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա. Ալէլուիա։
Օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա. Ալէլուիա։„

155 “Եւ եւս որք հաւատով...։„ — Վերյիշեալ կցուրդներով մէկտեղ Հաղորդութիւնը կատարուելէն ետքը Սարկաւագը ժողովրդեան կ'ըսէ. “Եւ եւս որք հաւատով ընկալայք...։ Հոս 3 “եւ„ զօդերը խորքով երկու անգամ նոյն հատուածին մէջ կրկնելով կը հաստատէ։ Որուն վրայ, ինչպէս կ'երեւայ թէ նշանակեն խորքովս բացայայտ խօսքերը, ժողովուրդը միաձայն կ'ըսէր տիկայ՝ եւ ոչինչ աւելի. վասն զի վերջին յաւե-

## ՅԵՏՀԱՂՈՐԴԱԿԱՆ ԱՂԱՒԹՔ

ԺԽ. — *Քահանայն. Գոհանամք զքէն, Քրիստոս փրկիչ մեր, որ զայսպիսի ճաշակումն բարութեան շնորհեցեր մեզ ի փրկութիւն[156] կենդանութեան. սովին պահեա զմեզ սրբապէս[157] եւ անարատս. եւ բնակեալ[158] շուրջ զմեւք քոյով աստուածային խնամովքդ՝ հովուեա զմեզ յանդաստանի կամաց քոց սրբոց, եւ բարեխիլաց. որովք ամրացեալք յամենայն բանսարկուին ընդդիմութեանց, քումդ եւեթ արժանի եղիցուք լսել ձայնի. եւ քեզ միայն քաջայաղթ եւ ճշմարիտ հովուիդ հետեւել եւ առ ի քէն ընդունել զպատրաստեալ տեղի յարքայութեան քում, Աստուած մեր եւ Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, որում վայելեն փառք իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:*

*Քահանայն.* **Խաղաղութիւն ընդ ամենեսեան:** *Անքննին,[159] անհաս, երրեակ ինքնութեանդ, հատիչ, ընդունող եւ անբաժանելի միասնական սուրբ*

---

*ընկալեալք յաստուածային սուրբ յանմահ խորհրդոյս, զՏէառնէ գոհացարուք* (M ...*խորհրդոյս՝ գոհանալով զՏէր:*) — Խորով Մեկնութեան մէջ (տպ. էջ 60, տող 32) Քարոզին ծայրը կը կցէ՝ "Ի- ողա ոսէն Ժ-բան Ժողովուրդն. Գոհանամք զքէն, Տէր:" Ասոր անմիջապէս կը կցէ Յետհաղորդական Աղօթքն (Հմմ. ԺԵ:)

ԺԵ. ‖243 MN "*Գոհանամք զքէն, Տէր, որ զայսպիսի*" եւն: ‖245–6 MN "*սուրբս եւ անարատս*": — "*Զմեւք*" միայն M, իսկ CW եւ N "*զմեօք*". ասոր կից՝ MN "*քո աստուածային խնամօքդ:*" CW "*խնամօքդ*": — M "*հովուեա յանդաստանի.*" եւն. N "*հովուել զմեզ եւ հանգուցանել յանդաստանի*" եւն: ‖247 MN "*որով ամրացեալք*": ‖248 MN "*եղիցուք արժանի լսել ...եւ քեզ միայնոյ քաջայաղթ*" եւն: ‖249 Միայն N "*հետեւեալ:*" ‖250 M "*յարքայութեանդ երկնից.*" N "*(տեղի) արքայութեան քո*" եւն: — "*Եւ փրկիչ*" Խորով չէ գրած. ունին Լամբրոնեանք (MN), որ վերջաբանն ալ կը գրեն՝ "*(...Յիսուս, Քրիստոս), որ օրհնեալ ես ընդ Հօր եւ* (M *ընդ*) *սուրբ Հոգւոյդ, այժմ եւ:*" ‖251 W "*վայելէն:*" ‖253 MN "*Խաղաղութիւն ամենեցուն: Սարկ. Աստուծոյ երկրպագեսցուք.* (M *Ժող. Առաջի քո Տէր:*) — **Թէ** CW եւ *Թէ* MN կը գրեն

լուածներ կ'երեւան "*որ կերակրեցեր զմեզ յանմահական... կեանք* (*կեանս?*) *անձանց մերոց:*"

156 "*Ի փրկութիւն* (*կենդանութեան*):" — Յայտնի է թէ աս է հարազատը՝ չէ թէ Հասարակ Ընթերցուածոյն "*ի սրբութիւն* (*կենդանութեան*)" կարդացածը: Լամբր. ալ Խորովին հետ է:

157 "(*Պահեա զմեզ*) *սրբապէսս.*" — Լամբր. եւ Հասարակ Ընթերցուածն ինչպէս նաեւ Վենետկոյ Օրինակներէն մէկը՝ "*սուրբս:*"

158 "*Բնակեալ շուրջ զմեւք...*". — Լամբր. եւ Հասարակ Ընթերցուածը՝ "*բնակեալ:*" Լամբր. քիչ մը ետքն ալ "*հովուել զմեզ եւ հանգուցանել... քում եւեթ եղիցուք արժանի լսել ձայնի... միայնոյ... հետեւեալ եւ... արքայութեան քո... որ ես օրհնեալ ընդ Հօր եւ Ս. Հոգւոյդ...:*" — Հասարակ Ընթերցուածը՝ "*խնամովքդ.*" Լամբր. "*խնամօքդ:*" — Հասարակ Ընթերցուածը՝ "*յարքայութեանդ երկնից:*"

159 "*Անքննին անհաս երրեակ...:*" — Հոս Խորովու ընթերցուածը մեզի հարազատ չի հնչեր աս երեք բառերուն նկատմամբ: ("*Ընդունող եւ անբաժանելի*") *միասնական*՝ զորն որ Հասարակ Ընթերցուածն ալ ունի, իբրեւ "*համագոյ*" առնուած է, բայց որուն չտեսանք ցոյց վայր նախընթաց պատարագներուն մէջ, հապա իբրեւ ἑνικός առնուած: Ոչ միայն բառ բանի վարդապետութեան, հապա հնագոյն ճաշակի լեզուին՝ ընտիր կու գայ մեզի հոս Լամբրոնացւոյն բնագիրը, որուն ամբողջն աս է՝

"*Անքննին, անհաս, երրեակ ինքնութեանդ, հատիչ, անբաժին եւ անքակ տէրութեանդ սրբոյ Երրորդութեանդ եւ միասնական աստուածութեանդ վայելէն փառք իշխան. եւ պատ.:*"

*Երրորդութեանդ վայելեն փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։* 255

*Սարկաւագն.*[160] Օրհնեա, Տէր։[161]

---

“Անքննին„ եւն։ ‖[254] MN “Հաստիչ, անբաժին եւ անքակ տէրութեանդ (M տէրութեան) որոյ երրորդութեանդ, (N կցէ՝ “եւ միանձնական աստուածութեանդ„) վայելէ փառք„ եւն։ — Նաեւ խօսքով “որոյ Երրորդութեանդ, որում վայելեն„ եւն կ'ըսէ, բայց այս “որում„ անկէ յառաջ եկած ըլլալու է որ խօսքով վերջաբանս բաժնած էր նախընթացէն մեկնութեան պատճառաւ, եւ չէ ուզած անկապ “վայելեն փառք„ եւն կցել վերջաւորութիւնը։ ‖[257] Այս վերջին “Սարկաւագն. Աւրհնեա Տէր„ չունի խօսքով (C եւ W), որուն քով հոս կը դադրի Պատարագն (տպ. էջ 64) եւ անոր Մեկնութիւնը. կը յաջորդէ հոն “Յորդորակ„ մը եւ Յիշատակարանն։ Լամբրոնեանք ունին աւելի ետքը “Որ օրհնես զայնոսիկ„ եւ միւս յարակիցներն՝ ինչպէս կայ սովորական Պատարագին մէջ. (տես Լամբր. տպ. Վեն. էջ 225—6 եւ վարն ի կարգին։)

Ուրիշ տեղ յառաջ բերած ենք Ղազարայ աս խօսքը՝ “Երրեակ ինքնութեանն միութիւն ըստ անբաժան սուրբ Երրորդութեանն.„ որով ան մեր փառաբանութեան նախնաբար ու պատարագին մասն ըլլալը կ'երաշխաւորուի։

160 “Սարկաւագն. Օրհնեա, Տէր։„ — Այսպէս բացայայտ կը դնէ խօսքով յընթացս մեկնութեան։

161 Աւանդ կարծեաց՝ տասնեկ ըստ Լամբր. “Քահ. Օրհնեալ եղերուք ի շնորհաց սուրբ Հոգւոյն Երթայք խաղաղութեամբ. եւ Տէր եղիցի ընդ ամենեսեան։

Ժող. Ամէն։„

— Կը դառնանք վերը խօսքովս բնագրին՝ փակագծի մէջ առնուած մասին։ Աս մասը, նախընթաց պատարագներուն համեմատելով, կասկած մը չենք ունենար հաստատելու թէ ան մեր պատարագին յունական բնագրին վերաբերած ըլլայ։ Աս մասը հաւանականաբար Հայաստանի յատուկ է։

## Ե.

## ՎԵՑԵՐՈՐԴ ՊԱՏԱՐԱԳ

*(Հատակոտորք քաղուած ի Պատարագէն յանուն Ոսկեբերանի:)*

### ԱԶԴՈՒՄՆ

*Աս պատարագը վեցերորդ պատարագ է որն որ ամբողջապէս տեղ մ'եղած պիտ'որ ըլլայ, բայց հիմա Հատակոտորներն ունինք՝ որոնք կ'ամբողջանան՝ Լուգդունեան մասերէն Դ. պատարագէն եւ մեր Հասարակ պատարագէն առնելով, եւ ըստ մեծի մասին պատարագի էական մասերն ունին, որոնք են հետեւեալները:*

## ՀԱՏԱԿՈՏՈՐՔ

*Այլոյ (վեցերորդ) պատարագի:*

### ԱՂԱՒԹՔ ՈՂՋՈՒՆԻ[1]

*Ա. — Ի սկզբանց արարիչ ամենաօրհնեալ եւ ի սուրբս հանգուցեալ, որ ոչ յիշելով զյանցանս մեր՝ արարեր մոռացումն մեղաց մերոց, եւ մարդասիրապէս զթացեալ արժանաւորս արարեր ըստ անմարմնոցն զուգակիցս կալ առաջի աստուածութեանդ քո, եւ ի հոտ անուշից (քոց) մատուցանել զպատարագս զայս, որով հաշտեսցի ապաշխական աստուածութիւնդ քո յարարածս ի ձեռն զենման Միածնիդ քո Տեառն մերոյ եւ փրկչիդ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

### ԿՈՉՈՒՄՆ[2]

*Բ. — Քեզ երկիր պագանեմք եւ ի քէն հայցեմք, անբաւ բարերարութդ Աստուած, առաքեա ի դաստիարակեղէն իջեցդ վերնական շնորհիւ զնորոգող*

---

Այս բնագրին ներքեւ ձեռագրաց ընթերցուածոց տարբերութիւն չենք նշանակեր. վասն զի բնագիրս քաղուածք է պարզապէս ուրիշ Պատարագներէ, որոնց այս մասերն ըստ կարծեաց Հեղինակին առնուած ըլլալու են այսպիսի կամ նման կազմութեամբ այժմ կորուսած Պատարագէ մը։ Ոսկեբերանի անունն դրուած է առաջին խորագրին կից անոր համար՝ որ Հատակոտորոցս վերջին կարեւոր մասերը մեր սովորական Պատարագին մէջ կը գտնուին Յովհ. Ոսկեբերանի անուամբ։ Տես նաեւ Ոսկեբերանի անուն կրող Նուիրագործութիւնք քիչ մ'ետքը՝ Մաս Զ., գլ. 1։ ՀՐՏՐ.

Ա. ‖[1—9] Տես Պատարագ «Գր. Աստուածաբանի,» Հատ. Գ, վերը՝ էջ 246—7, տող 44—50։

[1] Ա. «Ի սկզբանց արարիչ ամենօրհնեալ...:» — Ցառաջ քան զկոչումն ի Գ. պատարագէ, էջ 246։

[2] Բ. «Քեզ երկիր պագանեմք եւ ի քէն հայցեմք...:» — Աղօթք կոչման ի Գ. պատարագէ, էջ 250։

*եւ զմարդասէր Հոգիդ քո սուրբ ի մեզ † եւ ի պատարագս յայս †, զոր եդեալ այժմ առաջի, որպէս զի արասցես զհացս զայս՝ մարմին պատուական, եւ զգինիս զայս՝ արիւն պատուական Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի:*

## ՅԻՇԱՏԱԿՔ[3]

*Գ. — Օրհնեա, Տէր, եւ զպսակ տարւոյ քաղցրութեամբ քո եւ զաւդս բարեխառն եւ զպտուղս երկրի հանապազ: Պահեա, Տէր, եւ զհաւատացեալ ժողովուրդս քո յամենայն նեղութենէ եւ ի փորձութեանց դիւականաց եւ ի մարդոց չարաց եւ յանհանդուրժելի որոգայթից եւ ի գիշերական եւ ի գիճական խորհրդոց. եւ տուր մեզ բարւոք եւ երանելի վարուք եւ բարի գործովք մտանել ի սրբութիւն սրբոց քոց, զուարճանալ եւ ցնծալ հոգեւորական խնդութեամբ, եւ միաբան մատուցանել զոհութիւն եւ խոստովանութիւն եւ երկրպագութիւն քեզ, Հայր, եւ Միածնի Որդւոյ քո եւ սուրբ Հոգւոյդ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:*

*Գ. — Սարկաւագն[4] քարոզէ. Գոհացարուք զՏեառնէ Աստուծոյ մերոյ, որ արժանի արար զծառայս իւր կալ առաջի սրբոյ սեղանոյս իւրոյ, եւ կատարել զաստուածեղէն խորհուրդ մարմնոյ եւ արեան Միածնի Որդւոյ իւրոյ: Աղաչեսցուք հաւատով, զի շնորհեսցէ զհաղորդութիւնս զայս ի պահպանութիւն պատուիրանաց:*

*Եւ յաղագս եպիսկոպոսին մերոյ խնդրեսցուք, զի շնորհեսցէ զնա ընդ երկայն աւուրս խաղաղական կենօք եւ առողջութեամբ հովուել զժողովուրդ իւր առանց մեղաց, եւ քարոզել զբանն ճշմարտութեան եւ լուսաւոր առնել զաչս սրտից մերոց վարդապետական բանիւ:*

*Եւ եւս հաւատով խնդրեսցուք յաղագս որք հաւատով ի Քրիստոս ննջեցին, զի զհոգիս նոցա ի յաւիտենական խորանսն ընկալցի, եւ զմեզ զամենեսեան պատսպարեսցէ հասանել յանվախճան ժառանգութիւն սրբոցն ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր: Կեցուսցէ եւ ողորմեսցի: (Պէտ'որ ըլլայ մանաւանդ՝ "Ի Քրիստոս Յիսուս: Տէր մեր, կեցո եւ ողորմեաց:,,)*

*Ժողովուրդն.* Կեցո, Տէր:

---

Բ. ‖[11–16] "Գր. Աստուածաբան,, Հտ. Ե, վերը՝ էջ 250, տող 105—110:

Գ. ‖[17–26] "Աւրհնէ,, Նախայիշելեաց մէջ, վերը՝ էջ 263—264, տող 151—159:

Դ. ‖[27–41] Տես նոյնը Բուն Բարսղի Պատարագին մէջ, Հտ. Թ. վերջերը, վերը՝ էջ 150, տող 214—227: — Նոյն՝ քիչ մը տարբեր բառերով՝

[3] Գ. "Օրհնեա, Տէր, եւ զպսակ տարւոյ . . .,, — ի Յիշատակաց ցվերջ կայ ի Գ պատարագէ, էջ 263-264:

[4] Դ. "Սարկաւագն քարոզէ. Գոհացարուք զՏեառնէ . . .,, — Քարոզութիւն յետ Յիշատակաց՝ յԱ պատարագէ, էջ 150:

### ԱՂԱՒԹՔ ԽՈՆԱՐՀՄԱՆ[5]

Ե. — Քեզ ամենայն արարածք, երկնաւոր եւ երկրաւոր բնութիւնք երկիր պագանեն, մարդասէր Տէր. ընդ որս եւ մեք խոնարհեցուցեալ զպարանոցս մեր խնդրեմք յառաջ սիրոյ քո, առաքեա զնորոգիչ Հոգիդ սուրբ եւ ճշմարիտ՝ սրբել եւ մաքրել զմեզ յամենայն ախտից, եւ պարգեւեա մեզ լիապէս եւ աներկիւղ եւ անպատապարտ մերձենալ ի կենդանարար եւ յանապական մարմին եւ յարիւն Որդւոյն Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

### ԱՂԱՒԹՔ ՆԱԽՀԱՂՈՐԴԱԿԱՆ[6]

Զ. — Հայր սուրբ, որ անուանեցեր զմեզ անուանակցութեամբ Միածնի քոյ, եւ լուսաւորեցեր մկրտութեամբ հոգեւոր աւազանին, արժանի արա ընդունել զսուրբ խորհուրդս զայս մեզ ի մեղաց թողութիւն: Տպաւորեա ի մեզ զշնորհս Հոգւոյդ սրբոյ, որպէս ի սուրբ առաքեալսն՝ որք ճաշակեցին եւ եղեն մաքրիչք ամենայն աշխարհի: Եւ արդ Տէր, Հայր բարերար, զհաղորդութիւնս զայս մատուցեալ ճաշակման երեկոյին աշակերտացն՝ բառնալով զխաւար մեղաց իմոց: Մի հայիր յանարժանութիւնս իմ, եւ արգելցես զշնորհս Հոգւոյդ սրբոյ. այլ ըստ անբաւ մարդասիրութեան քո պարգեւեա զսա քաւիչ մեղաց, լուծիչ յանցանաց, որպէս խոստացաւ եւ ասաց Տէր մեր Յիսուս Քրիստոս թէ՝ Ամենայն որ ուտէ զմարմին եւ ըմպէ զարիւն իմ, կեցցէ յաւիտեան: Արա զսա մեզ ի քաւութիւն. զի որք կերիցեն եւ արբցեն ի սմանէ, հանցեն զաւրհնութիւն եւ զփառս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:

### ԱՂԱՒԹՔ ՅԵՏՀԱՂՈՐԴԱԿԱՆ[7]

Է. — Գոհանամ եւ մեծացուցանեմ եւ փառաւորեմ զքեզ, Տէր Աստուած իմ, զի զիս զանարժանս արժանացուցեր յաւուր յայսմիկ հաղորդակից լինել աստուածային եւ սոսկալի խորհրդոյդ քո, անարատ մարմնոյդ եւ պատուական արեանդ: Վասն այսորիկ զսոսա ի բարեխաւսութիւն ունելով աղաչեմ, յամենայն աւուրս եւ ի ժամանակս կենաց իմոց ընդ սրբութեանդ

---

նաեւ “Սահակայ„ պատարագին մէջ, Հտձ. Ը. վերջերը, վերը՝ էջ 234, տող 208–223:

Ե. ‖43–48 “Գրիգ. Աստուածաբան,„ վերը՝ էջ 250, տող 112–118:

Զ. ‖50–63 Տես վարը մեր Սովորական Պատարագին մէջ. (հմմտ. Խորհրդատետր, տպ. Վիեննա 1858, էջ 50, եւն:)

[5] Ե. “Քեզ ամենայն արարածք, երկնաւոր եւ երկրաւոր բնութիւնք...„ — Աղօթք խոնարհման, ի Գ. պատարագէ, էջ 250:

[6] Զ. “Հայր սուրբ, որ անուանեցեր զմեզ անուանակցութեամբ...„ — Յառաջ քան զճաշակումն, ի Հասարակ պատարագէ:

[7] Է. “Գոհանամ եւ մեծացուցանեմ...„ — Աղօթք՝ որն որ յայտնապէս կը համապատասխանէ՝ Հասարակ պատարագին յառաջ քան զճաշակումն աղօթքին:

քո պահեա զիս. որպէս զի յիշելով զբարեգթութիւնդ քո, եւ կենդանի լինել ընդ քեզ՝ որ վասն մեր չարչարեցար եւ մեռար եւ յարեար։ Մի մերժեսցի, Տէր իմ եւ Աստուած խորտակիչն՝ կնքելով անձին իմոյ պատուական արեամբդ քո։ Ամենակարող, մաքրեա զիս սոքաւք յամենայն մեռելոտի գործոց իմոց։ Որ միայնդ ես անմեղ, ամրացո զկեանս իմ, Տէր, յամենայն փորձութենէ. եւ զպատերազմողն իմ դարձո յետս՝ պատկառեալ եւ ամաչեցեալ, որչափ յառնէ ի վերայ իմ։ Որ ես հզաւր, աւգնական եւ պաշտպան իմ, ամրացո զգնացս մտաց եւ լեզուի իմոյ եւ զամենայն ճանապարհս մարմնոյ իմոյ։ Եւր հանապազորդ ընդ իս ըստ անսուտ խոստմանց քոց թէ Որ ուտէ զմարմին իմ եւ ըմպէ զարիւն իմ, նա յիս բնակեսցէ եւ ես ի նմա։ Դու ասացեր, մարդասէր կացո զբանս աստուածային անլուծանելի հրամանաց. քանզի դու Աստուած ողորմութեան եւ գթութեան եւ մարդասիրութեան եւ պարգեւիչ ամենայն բարեաց, եւ քեզ վայելէ փառք հանդերձ Հաւր եւ ամենասուրբ Հոգւոյդ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։

## ԱՂԱՒԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ[8]

Ը. — Գոհանամք զքէն, Հայր ամենակալ, որ պատրաստեցեր մեզ նաւահանգիստ սուրբ եկեղեցի՝ տաճար սրբութեան, ուր փառաբանի սուրբ Երրորդութիւնդ։

Գոհանամք զքէն, Քրիստոս թագաւոր, որ պարգեւեցեր մեզ կենդանութիւն կենարար մարմնով եւ արեամբդ քո սրբով, շնորհեա զքաւութիւն եւ զմեծ ողորմութիւն։

Գոհանամք զքէն, Հոգիդ ճշմարիտ, որ նորոգեցեր սուրբ զեկեղեցի. անարատ պահեա հաւատով Երրորդութեանդ յայսմ հետէ մինչեւ յաւիտեանս։

---

Է. ‖65–83 Տես վարը Սովորական Պատարագին մէջ, "Ցովհաննու Ոսկեբերանի„ անուամբ. (Հմմտ. Խորհրդատետր, տպ. Վիեննա 1858, էջ 51, ետն։)
Ը. ‖85–93 Նոյն Սովորականէն. (Հմմտ. Խորհրդատետր, անդ էջ 52, ետն։)

8 Ը. "Գոհանամք զքէն, Հայր ամենակալ, որ պատրաստեցեր ...„ — Աղօթք ի մէջ եկեղեցւոյ՝ ի Հասարակ պատարագէ։

## 2.

### *Նրախայից պատարագ։*

*Աս վերջին հինգերորդ պատարագն էր Հայոց գոնէ ընդհանրապէս գործածած պատարագը Զ դարէն մինչեւ Կիլիկեցւոց ժամանակը՝ իբրեւ Հաւատացելոց պատարագ։ Ի՞նչ ունինք հին Հայաստանի Նրախայից պատարագին վրայ։ Շատ քիչ բան ծանօթ է մեզի աս նկատմամբ, գրեթէ ոչինչ։*

*Իրաւ է, ծանօթ է որ գոնէ մինչեւ Ե դարուն վերջերը դեռ երախայք կային, դեռ ապաշխարողաց կարգերը գոնէ ընդհանրապէս վերցուած չէին, աղօթից եւ Խորհրդոց հաղորդութիւնն իրարմէ կը զանազանուէր։ Ե դարուն թէ առաջին եւ թէ երկրորդ կէսին մէջ գործածուած կանոնները դեռ շատ խիստ են։ Դիւահարաց՝ նկատմամբ մկրտութեան եւ հաղորդութեան խորհրդոց կանոնք եւ կանոնագէտք որոշումներ կ՚ընեն։[1] Հրապարակաւ ծանր մեղանչողի մը չէ թէ միայն անձը՝ այլ եւ տուած պատարագիքը չէր կրնար ընդունուիլ։[2] Յովհան Մանդակունի դեռ Ե դարուն վերջերը կ՚աղաղակէր (Ոսկեբերանի խօսքերը փոխ առնելով) "Ոմանք թէպէտ եւ ի խղճէ մնացին ոչ հաղորդին, սակայն կեղծաւորեալք մնան ի ներքս, կարծեցուցանելով արտաքնոցն եթէ ի հաղորդելոցն իցեն. զի ամենայն որ ոչ է արժանի Խորհրդոյն, եւ ոչ ի ներքս կալոյ, ոչ աղօթից եւ ոչ հաղորդութեան. այլ ելանել արտաքս ընդ անարժանսն։" Դարձեալ. "Այսօր իբրեւ զքրիստոնեայ (իբր մկրտեալ) ի մարմնոյ Տեառն վայելես, եւ վաղիւն իբրեւ զերախայ հեռանաս ի նմանէ. այսօր ընդ խոստովանողսն, եւ վաղիւն արտաքոյ ընդ ուրացողսն. այսօր ընդ հաւատացեալսն ի Խորհուրդն մտանես, եւ վաղիւն ընդ անհաւատսն արտաքս ելանես . . .։ Նոյնպիսիք են՝ որ յուրուրս ինչ հաղորդին Խորհրդոյն, եւ ապա [illegible] . . .։ Այս է խղճի մտօք մերձենալ. այս է նենգութեամբ հաղորդել եւ պատրանօք եւ խաբէութեամբ եւ թերահաւատութեամբ ճաշակել։"[3]*

*Տարակոյս չկայ որ "Նրախայից" ըսուած պատարագը կրկին մաս ունէր. մէյ մը՝ մինչեւ Ունկնդրաց դուրս հանուիլը, մէյ մ՚ալ անկէ ետքը ան մասը՝ որն որ Վարդապետութենէն ետքը Ապաշխարողաց դուրս հանուելովը կը լմննայ։*

*Առաք. Սհմնդր. պատարագին մէջ Ունկնդրաց, Նրախայից, Դիւահարաց, Լուսաւորելեաց (այսինքն մօտ ատեն մկրտուելիքներուն), վերջապէս Ապաշխարողաց վրայ զատ զատ աղօթքներ կան։ Դեռ Բիւզանդեան պատարագներուն Նրախայից վրայ եղած աղօթքը կը կենայ։ Բայց Հայոց քով աս աղօթքներէն եւ ոչ մէկը հիմակուան գործածական Հասարակ պատարագին մէջ պահուած է։ Միայն Նրախայից վրայ եղած աղօթքէն քանի մը ասութիւններ հիմակուան Մկրտութեան կարգին գլուխը դրուած երախայացուցման աղօթքին մէջ կը տեսնուին, ինչպէս յունական աղբիւրներուն համեմատութենէն ակնյայտնի կ՚ըլ-*

[1] Եղիշէ, կանոնք վասն դիւահարաց. Մատենագրութիւնք, էջ 363։

[2] կանոնք Շահապ.։

[3] Մանդակ. Մատենագր. Ա. տպ. 160—166։

լայ։ Մնացածն ալ անշուշտ թափառած է սա կամ նա աղօթքին մէջ. բայց վերակազմութիւնն ալ անհնարին է։

*Երախայից պատարագին առաջին մասին համար — այսինքն այն մասին համար՝ որն որ Երախայից պատարագին Սկիզբէն մինչեւ Աւետարանն է, — լիովին գրուած յիշատակարան մը մեզի կը պակսի. վասն զի նոյն իսկ Խոսրովու՝ իր քահանայական աղօթից եւ քարոզութեանց մեկնութիւնն Աւետարանէն ետքն սկսելէն՝ կ'երեւայ որ պատարագն այն գաւառուն մէջ այն տեղէն կը գրուէր. անկէ նախընթացն այլեւ այլ մանր գրոց բաժնուած էր։ Որպիսի եւ իցէ, նաեւ յայսմ մասին բոլորովին առանց լուսոյ չմնալու. համար Ը դարուն առաջին կէսէն, ուստի Խոսրովէն երկու դար յառաջ, ճիշդ սոյն մասին — այսինքն Սկիզբէն մինչեւ Աւետարանին ընթերցումն ու Հանգանակը — ուրուագիծ մ'ունինք թէ Յովհաննու Իմաստասէրի քով եւ թէ Եկեղեցւոյ վրայ ճառերուն հեղինակին քով, որն որ կամ ինքն Իմաստասէր է եւ կամ անոր ժամանակակից եւ գաղոցակից մէկը։ Այս ուրուագիծն Աւետարանին հասնելէն ետքը կենալէն կ'իմացուի դարձեալ որ անկէ անդին այն առնուած Խորհրդատետրին կը վերաբերէր։*

*Իսկ Աւետարանէն մինչեւ Հաւատացելոց պատարագը Խոսրովէն ունինք, անանկ՝ ինչպէս իր ատենները կը գործածուէր. եւ սա մասը, դարձեալ Ներսիսեանց ատենները՝ հետեւեալ մասանց պէս, Բիւզանդեան պատարագէն յաւելուածներ առած է։*

---

## Ա.

## ԵՐԱԽԱՅԻՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻՆ ՈՒՐՈՒԱԳԻԾԸ

1. (*Ի միաշաբաթւոջ*) *կը մաքրուէր պատարագէն առաջ*[1] *եկեղեցին կամ տաճարը։*

2. *Խորհուրդը (այսինքն պատարագին համար որոշուած հացն ու գինին) խորհրդանոցին մէջ նախ կը հանգուցանէին, որպէս զի ետքը սեղանը բերուի։*[2]

3. *Եպիսկոպոսը կամ քահանայն եւ պաշտօնեայք եկեղեցին կը մտնէին, դէպ ի արեւելք երկրպագելով եւ խաչ կնքելով իրենց վրայ, կը սկսէր (կիւրակի օրը) “Միածին Որդի եւ Բանդ Աստուած„ եւն։*[3]

— *Աս “Միածին Որդի...„ ժամամուտը Յակոբայ եւ Մարկոսի պատարագներուն սկիզբներն ալ կը գտնուի եւ սարկաւագին կ'ընծայուի՝ որն որ հիմակուան Հասարակ պատարագին մէջ դպիրն ալ կ'ըսէ, թէեւ պատարագին մէջ քահանային ինկած է. ուստի եթէ, ինչպէս Գերմանոսի Պատարագի մեկնութենէ կը տեսնուի, նաեւ Բիւզանդեան սովորութեան մէջ կայ,*[4] *ասիկայ կիւրակի օրուան համար էր, ինչպէս վերոյիշեալ տեղէն կ'իմացուի։*

---

[1] Մաշտոց. Յովհ. Իմ. էջ 142, տող 3։

[2] Անդ, էջ 141, տող 22։

[3] Հմմտ. Բենեդիկ. ԺԴ. ի կոնդակին Etsi pastoralis, տուեալ de ritibus ab Italo-graecis tenendis § VI, 6 . . . Si alicubi viget consuetudo producendi jejunium cum Missa usque ad vesperam, minime aboleatur, sed in suo robore ac firmitate permaneat. Տես Ղազար, Փարպ. էջ 207—210։

[4] Տես նաեւ Daniel, adnot. ad Liturg. S. Chrys. Cap. XVI. Բայց իրեն բոլորովին յատուկ չէ. անոր համար Բիւզանդեան պատարագէն առնուած չ'ըսուիր Հայոց համար։

*— Հիմակուան պատարագին սկիզբը, ինչպէս նաեւ “Մանրուսմանց„ սկիզբը, ժամամուտներու հաւաքում մը կայ։ Սակայն ասոնցմէ շատ քիչերը կրնան հին համարուիլ։ Աս կարգէն են անշուշտ ասոնց սկիզբը գտնուածները՝*

*ա) “Որ ի Հօրէ առաքեցար . . . :„*

*բ) “Որ ըստ ամենայն միտս անցանէ (չէ թէ “անցանես„[1]), զխաղաղութիւն քո տուր մեզ հանապազ, զքեզ աղաչեմք:„*

*գ) “Ի տաճարի սրբոց եւ ի յիշատակի սրբոց (մարտիրոսաց)„ եւն. նաեւ*

*դ) “Ճգնաւորք (այսինքն մարտիրոսք) Քրիստոսի, որ տանջանաց անօրինացն . . . :„*

*Ասոնք պինդ հիներն են։ Ընթացս Զ եւ Է գարերուն ծնընդեան եւ Ջատկի ժամամուտները գործածուած են։*

*Հոս կը վերաբերի ժամագրոց մէջ Նրեկցեան ժամերգութեան ծայրը մնացած “Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր„ եւ “Պահպանեա զմեզ,„ ինչպէս նաեւ “Սուրբ եկեղեցեաւս աղաչեսցուք զՏէր„ եւ “Առ դրան սուրբ եկեղեցւոյս„ կամ “Ի մէջ տաճարիս եւ առաջի աստուածընկալ:„ Որն որ սանկ ձեւով ալ կ'ըսուէր “Ի յարկի քում սրբութեան եւ ի տեղւոջ փառաբանութեան, հրեշտակաց բնակարանս եւ մարդկան քաւարանս, առաջի աստուածընկալ . . . :„*

*Բայց ասոնք ժամանակաւ քիչ մը յետնագոյն ձեւեր պիտ'որ ըլլան՝ որոնք եկեղեցի մտցուած ատեն կ'ըսուէին, նախընթաց ըլլալով ասոնց սաղմոսք, այսինքն կա՛մ “Ուրախ եղէ ես՝ որք ասէին ցիս ի տուն Տեառն երթիցուք մեք . . .„ “Տուր զօրութիւն ծառայի . . .„ կամ “Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր. Մտէք առաջի . . . :„*

*Հնագոյն ձեւը Քարոզութեան եւ աղօթքին՝ որն որ աս սաղմոսին կը հետեւէր, է հետեւեալը՝*

*“Քարոզ. Օրհնեսցուք զՏէր Աստուած Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ արժանի արար զմեզ կալ ի տեղւոջ փառաբանութեան եւ երգել զերգս հոգեւորս։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո եւ ողորմեա մեզ:„*

*(Աղօթք.) “Ի մէջ տաճարիս եւ առաջի աստուածընկալ նշանացս եւ սուրբ տեղւոյս խոնարհեալ երկիւղիւ երկիր պագանեմք, զսուրբ, զհրաշալի եւ զյաղթող զյարութիւնդ քո փառաւորեմք; եւ քեզ մատուցանեմք զօրհնութիւն եւ զփառս ընդ Հօր եւ ընդ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ . . . :„[2]*

4. *Ասոր վրայ կրկին գալք “Տէր թագաւորեաց„ սաղմոսը կ'ըսէին տուն առ տուն փոփոխակի։[3] Աս սաղմոսը “պաշտաման սկիզբն„ կը համարուէր. այսինքն հացն ու գինին* **Զեօլ Ճէնճէլ** *խորհրդանոցին մէջ պատրաստելէն եւ հանգուցանելէն անմիջապէս ետքը կ'ըսուէր։[4]*

5. *Կը յաջորդէր Աւետարանին համբուրձումը Սրբասացութեան հետ մէկտեղ։[5]*

---

[1] Փիլ. Դ, 7։

[2] Տես Ձեռագիր Մատենադ. Վանաց Վիեն. (Հին) Թիւ 173, գրեալ յամի ՊՀԶ (1427) ի Վանս Մեծոփայ յաւուրս Թովմայ Մեծոփեցւոյ, յորում դեռ երգք Ներս. Շնորհալւոյ չեն մտած, բայց միայն ի Ճաշու ժամն՝ Օրհնեմք, Խաւարեցաւ եւ Չարչարակցեալ։

[3] Յովմ. խմ. էջ 142, տող 12։

[4] Անդ, վասն Միջաշար. էջ 104, տող 32. “Իսկ աստ Սկիզբն Պաշտաման՝ Տէր Թագաւորեաց։„ — Officium protheseos, եթէ կար կարգաւորուած, կը կատարուէր այս սաղմոսով։

[5] Անդ, տող 18 եւ էջ 105։ — Երեքսրբեան Սրբասացութիւնն առ՛ ձեւին մէջ՝ “Սուրբ

6. Մի եւ նոյն ատեն խնկարկութիւն կ'ըլլայ շուրջ զսեղանով։ Աս երկքին հանդիսութիւնն անոր կը յանգէր որ եպիսկոպոսն Աւետարանով մէկտեղ կ'երթայ բեմի աթոռը կը նստէր՝ Աւետարանը լանջաց (կուրծքին) բռնած։[1]

Սեղանոյն շուրջանակի խնկարկութիւնը Երեքսրբեանին ատեն՝ կը ցուցընէ որ նոյն երգն Երրորդութեան կ'ուղղուէր. վասն զի Սեղանը՝ Երրորդութիւն կը նշանակէր, ինչպէս «Տեսիլք Սահակայ» կը հաստատէ եւ նոյնէն կը կրկնէ Իմաստասէր։

7. Քարոզ համաշխարհական (Ասասցուք ամենեքեան։ Վասն խաղաղ. ամեն. աշխարհի)։

---

## Բ.

## ԵՐԱԽԱՅԻՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍԻՆ ՈՒՐՈՒԱԳԻԾԸ

8. Համաշխարհական քարոզէն կը հետեւէին Սաղմոսք, Ընթերցուածք։

Ընթերցուածները Հայոց մէջ, Ասորւոցմէ առնուած Առաքելոց կանոնաց համեմատ, այսպէս կը բաժնուէին՝[2]

Մարգարէական,
Առաքելական եւ
Աւետարանական։

Եպիսկոպոսին կամ քահանային ըրած վարդապետութիւնը Խօսք կամ Մեկնութիւն կամ նաեւ Թարգմանութիւն կ'ըսուէր. վասն զի 406էն յառաջ հարկ էր որ Ընթերցուածներէն ետքը կամ պատարագիչը կամ ուրիշ մէկը նոյները ժողովրդեան համար բերնուց թարգմանէր, անշուշտ իր կողմանէ մեկնութիւն ալ աւելցնելով։[3]

— Ան սաղմոսը՝ որն որ մարգարէական ընթերցուածոյն եւ ի Գործոց ընթերցուածոյն նախընթաց կ'ըլլայ, կ'ըսուէր անշուշտ «ողջոյն կամ կցուրդ։» Առաքելական թղթոց նախընթաց սաղմոսին կ'ըսուէր «Մեսեդի.»[4] վերջապէս Աւետարանին նախընթաց եղող սաղմոսին «Ալէլուիա։»[5] — Անտարակոյս աս անուանակոչութիւններն ըստ մասին իրենց գիրքէն եւ ըստ մասին եղանակներէն՝ որոնցմով կ'երգեցուէին, յառաջ եկած են։

---

Աստուած, սուրբ հզօր, սուրբ անմահ, ողորմեաց մեզ» տարակոյս չկայ որ դէպ ի Ե դարուն երկրորդ կէսն ի գործածութեան էր Հայոց մէջ, որովհետեւ 460—470ին շինուած «Սահակայ Տեսիլն» (տռ. փարպ. էջ 53) նոյնն իբրեւ ծանօթ կ'ենթադրէ։ Բնականապէս ան չի կրնար ապացուցանել որ արդէն պատարագին մէջ մտած էր, սակայն շատ հաւանական է որ մտած էր։

1 Տես Լամբր. 316, զոր որ կ'ակնարկէ ընդ աղօտ նաեւ Իմաստ. էջ 105, տող 9։

2 Տես Նոյն.։

3 Տես Խորեն. Գիրք Գ.։

4 Յովհ. Իմաստասէր վասն Միաշաբ. էջ 105, տող 31, եւ Լամբր. էջ 317։ Յ. Իմաստասէր (Ճառ. Եկեղ.) կ'ըսէ թէ Մեսեդի յունական անուն է եւ կը նշանակէ «օրհնութիւնս երգել։» [«Երգնոր երգէն Դաւթի անուանելով՝ որ ընդ յունարէն բարբառովն թարգմանի, այս ինքն է «օրհնութիւնս երգել։» Եկեղ. Ճառին հեղինակը շատ յունարէն գիտցող մը չ'երեւար նաեւ այլուստ՝ երբ որ կ'ըսէ «եկեղեցի» յեբրայեցւոյն առ մեզ «ժողով» թարգմանի։»] Մեզի առիկայ ծանօթ չէ։ Առիկայ շփոթութիւն մը կ'երեւայ μελῳδία բառին՝ որն որ ետքինները Դաւթի թարգմանած են։

Մեզի կ'երեւայ որ զուտ հայերէն բառ է, եւ ըստ բառին ճիշդ նոյնանշան է կցուրդ բառին. որովհետեւ հին հայերէն բառ է Դուել՝ որն որ կցել կը նշանակէ կամ թէ բանի մը մէջը մտնելով կցիլ կամ յարիլ։ Այսպէս ի Թարգ. մեկն. Թղթոց Ոսկեբ. Եփես. Գլ. ԺԷ. «Ուր իցէ զի չիցէ առնան (խեղկատակութեան). որդ եւ յեկեղեցիս եւս եմուտ, եւ ի գիրս եւս դուեցաւ.» (յն. ἅπτομαι)։ Տես Հատընտիր. ի Հ. Թադ. Թռան. Հատ. Ա. էջ 232։

5 Յովհ. Իմ. անդ, տող 37. եւ Ճառ. Բ. յԵկեղ. էջ 142, տող 30։ Տես եւ Լամբր. էջ 317։

— *Քարոզութիւնը՝ սարկաւագին, ընթերցուածները (բաց յաւետարանէն)՝ անագնոսին կամ դպրակարգացին, սաղմոսները՝ փսաղտին կամ սաղմոսերգին գործն էր։*[1]

9. *Հանգանակը, Արեւելեայց (այսինքն անձուկ մտօք ըսուող Արեւելեայց) հետեւելով, անմիջապէս Աւետարանին կը յաջորդէր։ Նոյն իսկ գոնէ Զ դարէն. որովհետեւ Վրթանէս տեղապահ իր առ Կիւրիոն գրած թղթին մէջ՝ որ է ըստ Զ դարուն երկրորդ կէսին, իբրեւ ծանօթ բան մը կը խօսի թէ “Ընդ ամենայն տեղիս յեկեղեցիս ուղղափառաց յետ ընթեռնլոյ զԱւետարանն, որ ի Նիկիա սահմանեցաւ Հաւատն ասեմք։„*

— *Բայց թէ ինչ տեսակ “Նիկիական հաւատ„ է սակայն՝ քիչ մը ետքը կը տեսնենք։*[3]

---

[1] Լամբր. անդ։

[2] Որչափ որ մեր վերը դրած Հինգերորդ պատարագին բնագիրն ամբողջ զտած հանեցինք՝ վերջին Բիւզանդեան յաւելուածներէն զատելով, նկատմամբ Հրահանգութեանց (rubricaներուն) կը մնանք մթոյ մէջ. վասն զի մեր ունեցած հինակուան Հրահանգութիւնները (rubricaները) հազիւ ԺԲ դարու հնութեան կը հասնին։ Խոսրով աս նկատմամբ կամ ոչինչ կամ շատ սակաւ ինչ մեզի կը մատակարարէ։

Ընդհանրապէս սա կը տեսնենք որ թէպէտ այն պատարագը յունական ծագում ունեցած եւ յունականէն թարգմանուած ալ ըլլայ, սակայն գոնէ Զ դարուն սկիզբներէն սկսեալ — որ ատեն որ Հայք իրենց դրացի, միոյ տէրութեան հպատակակից եւ կրօնական խնդրոց մէջ համամիտ Ասորիներէն արարողական սովորութիւններ բնականաբար առին;— Հայոց Liturgiaն նորէն, գոնէ քանի մը բանի մէջ, սկսաւ Ասորւոց մօտենալ։ Ամենէն աւելի աչք զարնող կէտն է, ինչպէս վերն ըսինք, Հանգանակին անմիջապէս Աւետարանին հետեւիլը, որով առանձին նշանակութեամբ Արեւելեան եկեղեցիք Յունականներէն զատուելով, կը գտնուին Արեւմտեաններուն հաւասար։ Նիկեփորոսի ըսածին համեմատ Պետրոս Գնափեւս (Թափիչ) սկսաւ պատարագին մէջ Հանգանակն ըսել տալու, recitationem Symb. instituisse scribit, et inde forte conjectura non inverisimilis duci potest (կ'ըսէ Renaudotius) Haereticos prius incoepisse quam Orthodoxos. Theodorus lector anno 510 Timotheum (Alexandriae) Patriarcham statuisse scribit զատելն Հանգանակին ի պատարագի։ (Renaud. I, p. 200.)

[3] Հանգանակը, գոնէ այն Հանգանակը՝ որն որ Հայոց պատարագին մէջ կը գործածուի, չենք կարծեր որ Ե դարուն վերջը այն պատարագին հետ միատեղ գործածուած ըլլայ։ Փարպեցին՝ որն որ, ինչպէս տեսանք, մեր պատարագին մասերէն շատ բան մանր մունր յառաջ կը բերէ, ամենեւին առ Հանգանակէն նշան մը չի տար։ Սակայն գոնէ Զ դարուն կէսէն առաջ մտած պիտ'որ ըլլայ, Վրթանէս Տեղապահին խօսքին նայելով։ Լամբրոնացիէն առաջ տեղ մը ամբողջ գտնուած չունինք՝ բայց միայն Սեբէոսի քով Ներսէսի Շինողի եւ անոր աթոռակցաց առ Յոյնս գրած թղթին մէջ. բայց, աւաղ, շատ պակասաւոր՝ Օրինակին գէշութեան պատճառաւ, յայտնի կերպով ան ատեն իրենց գործածած պատարագին մէջէն առնելով։

Ահաւասիկ ամբողջ ձեւը, ինչպէս որ հոն կը գտնուի՝

“Հաւատամք ի մի Աստուած Հայր ամենակալ, յարարիչն երկնի եւ երկրի, երեւելեաց եւ աներեւութից։ Եւ ի մի Տէր Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ, ծնեալ յԱստուծոյ Հօրէ Միածին այսինքն ի գոյութենէ Հօր, Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ, ծնեալ եւ ոչ արարեալ։ Նոյնբնութիւն Հօր, որով ամենայն ինչ եղեւ յերկինս եւ յերկրի, երեւելիք եւ աներեւոյթք. որ յաղագս մեր մարդկան եւ վասն մերոյ փրկութեան իջեալ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս ի Մարիամայ սրբոյ Կուսէն Հոգւովն սրբով։ Որ եւ (էառ) հոգի, մարմին եւ միտս եւ ամենայն որ ինչ է ի մարդ, ճշմարտապէս եւ ոչ կարծեօք, չարչարեալ, այսինքն խաչեալ, թաղեալ եւ յերիր աւուր յարուցեալ, ելեալ ի յերկինս նովին մարմնով (նստաւ ընդ աջմէ Հօր։ Գալոց է նովին մարմնովն եւ) փառօք Հօր դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան։

“Հաւատամք եւ ի սուրբ Հոգին յանեղ եւ ի կատարեալ, որ խօսեցաւ յօրէնս եւ ի մարգարէս եւ յաւետարանս, որ էջն ի Յորդանան, քարոզեաց յառաքեալս եւ բնակեցաւ ի սուրբսն։

“Հաւատամք եւ ի մի միայն ընդհանրական եկեղեցի, ի մի մկրտութիւն, յապաշխարութիւն եւ ի թողութիւն մեղաց, ի յարութիւն մեռե-

Եկեղեցւոյ ճառին մէջ (որն որ անտարակոյս Դիոնեսիոսին է,) "Յետ որոյ խոստովանութիւն հաւատոյ յամենայն ընդհանուր յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ Աստուծոյ Հօր եւ Հոգւոյն սրբոյ:„ Յամենայն ընդհանուր բառէն կ'երեւայ որ բոլոր ժողովուրդը միասին կը զրուցէր Հանգանակը: Յոյն քահանայն հիմայ "ի ծածուկ„ կը զրուցէ ժողովրդեան կամ սարկաւագին զրուցած ատեն:

10. Հանգանակին կը հետեւէր, քարոզէ մը եւ քահանայական աղօթքէ մը ետքը, Վարդապետութիւնը:

— Խորհուրդ մասնաւոր կերպով կը նշանակէ թէ հոս է սուրբ տեղը:[1] Որուն վրայ անմիջապէս սարկաւագը դուրս ելլելու անձինքը կը հանէ, եւ կը սկսի Հաւատացելոց պատարագը:

Ասոնց մէջ, այսինքն մինչեւ Աւետարան, ամենեւին աղօթից ակնարկութիւն մը չկայ, չենք գիտեր թէ ասոնք կ'ենթադրուի՞ն թէ չէ: Աս սոյգ է որ, եթէ ենթադրուին ալ, ստուգիւ աս աղօթքներն ան Բիւզանդեան աղօթքները չէին՝ որոնք հիմակուան պատարագամատոյցներունս մէջ առնուած են Ոսկեբերանի ըսուած պատարագէն:

11. Ասոր համար Բիւզանդեան պատարագներուն մէջի Աղօթքները՝ որոնք հիմակուան Հայոց գործածական երախայից պատարագին մէջ առնուած են, բոլորն ալ հարկաւ պիտ'որ չունենան նաեւ Աւետարանէն առջինները՝ ինչպէս որ Աւետարանէն ետքինները կը տեսնենք որ չկան Խորհրդոյ քով:

Ուստի չկային անշուշտ հետեւեալներն Աւետարանէն յառաջ՝

ա) "Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ . . . :„

բ) "Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդ քո . . . :„

գ) "Որ հասարակաց զայս . . .„ — որոնք մէկիկ մէկիկ երեք կցուրդներուն (antiphoneներուն) կը հետեւին:

դ) "Տէր Աստուած մեր, որ կարգեցեր . . .„ — որն որ τοῦ εἰσόδου աղօթքն է:

ե) "Աստուած սուրբ, որ ի սուրբս հանգուցեալ ես . . .„ — երեքսրբեանին աղօթքը. ինչպէս նաեւ վերջապէս՝

զ) "Տէր Աստուած մեր, զբազկատարած զաղաչանս . . . :„

Աւետարանէն ետքն ալ չկար վերաբերութեան ատեն սա քահանայական երկայն աղօթքը՝ "Ոչ ոք արժանի է յըմբռնելոցս:„

---

լոց, ի դատաստանս յաւիտենից հոգւոց եւ մարմնոց, յարքայութիւնն երկնից եւ ի կեանսն յաւիտենականս:

"Իսկ որք ասեն, էր երբեմն յորժամ ոչ էր Որդի, կամ էր երբեմն յորժամ ոչ էր սուրբ Հոգի, կամ թէ յոչէից եղեն, կամ յայլմէ էութենէ կամ ի գոյութենէ ասեն լինել զՈրդի Աստուծոյ եւ զսուրբ Հոգին, կամ փոփոխելի կամ այլայլելի, զայնպիսիսն նզովէ կաթողիկէ առաքելական եկեղեցի:

"Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս երկիր պագանելով սրբոյ Երրորդութեանն եւ միասնական աստուածութեանն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:„

Աս Հանգանակին եւ անոր աս վերջին յաւելուածին ծագման եւ հնութեան վրայ զատ կը խօսինք: — Հմմտ. Հանգանակ հաւատոյ, որով վարի հայաստանեայց եկեղեցի. քննութիւն ծագման, հեղինակին եւ ժամանակին վրայ. գրեց Հ. Յովսէփ Վ. Գաթրճեան: Վիեննա 1891, 8o էջք 49: Նոյնը լատիներէն՝ P. J. Catergian „De fidei Symbolo quo Armenii utuntur Observationes.“ Viennae 1893, 8o pp. 52. ՀՐՏՐ.:

[1] "Ցայժմ տեղւոյ (այսինքն յետ աղօթիցն "Խաղաղութեամբ քով Քրիստոս Փրկիչ մեր„) առի որպէս յարձակել զժողովուրդն "Օրհնեա Տէր.„ զի [illegible] տեղի է, եւ աւարտեն զաղօթսն օրհնութեամբ, եւ ի [illegible] ունկնդրութիւն տան զանձինս, եւ ապա զխորհրդականն կատարեն:„

*Ինչպէս աս աղօթքը՝ որն որ «Քերովբէական Երգոյն»* (χερουβικὸς ὕμνος) *կապակցեալ է — վասն զի ան երգը դասուէն երգեցուելու ատեն՝ կ՚աղօթէ նոյնը քահանայն. — նոյնպէս նոյն երգը աս դարերուն մէջ Հայոց պատարագին մէջ չէր առնուած:* „Testis est Cedrenus carmen sacrum tempore Iustini II Imperatoris circa annum 600 in Liturgia sacra receptum esse — ἐπὶ τούτου ἐτυπώθη ψάλλεσθαι τῇ μεγάλῃ έ „τοῦ δείπνου μυστικοῦ“ — ἐτυπώθη δὲ ψάλλεσθαι καὶ ὁ χερουβικὸς ὕμνος. Ea de causa hymnus cum oratione sua: Οὐδεὶς ἄξιος κ. τ. λ. desideratur in officiis Syrorum, Coptitarum, Aetiopum, Nestorianorum.“ *Այսպէս* Daniel (in Adnot. ad Lit. Chrys. cap. XXII.) *ուր անմիջապէս կը յաւելու թէ սոյն երգը* “(hymnus) obvius est in liturgia Armenorum, qui cherubicam cantionem modo genitam, cum saeculo demum septimo prorsus ab orthodoxis secesserint, e Graecorum ritibus in suos transmigrare passi sunt.„ *Սակայն, ինչպէս ցայսվայր բացատրուածէն յայտնի է, ոչ Զ դար եւ ոչ գոնէ մինչեւ Ժ դար իսկ, Հայոց գործածած Պատարագը* μεγάλη εἴσοδοςին *ատեն* hymnus cherubicus *եւ սոր աղօթքը չունէր. շատ ուշ առաւ զանիկայ ուրիշ բոլոր Բիւզանդեան աղօթքներուն հետ:*

12. *Բիւզանդեան զգեստաւորութեան եւ* προσκομιδήին *վերաբերեալ մասերն եւ ոչ իսկ կը համեմատուին աս դարու Հայոց պատարագին մէջի մասանց հետ: Ինչպէս տեսանք, ամէն բան կը սկսի Երախայից պատարագէն, այսինքն* “*Փոքր մուտք*„*էն՝ որն որ* “*Միածին Որդի*„*ով կ՚սկսի. եւ բովանդակ կարգութիւնը Բիւզանդեանէն տարբեր է:*

*Երախայից վրայ աղօթքը համառօտ պատարագի պատրաստութենէն շատ կանուխ պիտ՚որ հանուած եղած ըլլայ. վասն զի Ե դարուն մէջ արդէն առ-հասարակ ութօրեայ կը մկրտուէին. անոր համար նոյն դարուն գրուածոց մէջ (ի մասնաւորի Մանդակունւոյն քով) մկրտութիւնը ուշացընողներուն նկատմամբ տրտունջ չենք կարդար: Ըսինք՝ առ. հասարակ. վասն զի կը գտնուէին չափահաս երախայք. բայց (ինչպէս Եղիշէի մէկ գրութենէն յայտնի է) ոչ ան յաճախութեամբ՝ որ օրըստօրական աղօթք ի պատարագի կատարուէր: Բիւզանդեան պատարագին սկիզբները դեռ. երախայից աղօթքը կեցած է: Սակայն մենք մեր վերոյիշեալ* Anaphora*ի նախընթաց հատուածներուն մէջ եթէ մեր հին երախայից աղօթքը չենք տեսներ ալ, նոյնը Ծիսարանին աղօթքներուն մէջ տարուած կը գտնենք իրեն հին եւ վճիտ լեզուն դեռ. ամբողջ պահած:*

*“Օրհնեալ ես Տէր Աստուած մեր բարերարութեամբ քով, որ նորոգութիւնք ես հնացելոց եւ կեանք մահկանացուաց: Դու ես զօրութիւն եւ օգնութիւն յուսացելոց ի քեզ: Ի քո հզօր եւ ամենազօր անունդ հաստատուն լիցին պատուական արարածք եկեալք ի ձեռնադրութիւն քրիստոնէութեան, հզօրք եւ աներկիւղք պահպանութեամբ աջոյդ քով սրբով, զի դու ես մերձաւոր ամենայնի եւ բարերար առ ամենեսին. պահեա զսոսա, եւ սրբեա ճշմարտութեամբ քով: Աղաչեմք զքեզ, Տէր, զի եկեսցէ ի սոսա Հոգի սուրբ, Հոգի ճշմարտութեան, Հոգի որդեգրութեան, եւ արժանաւորք եղիցին գտանիլ սուրբք յաջոյ ձեռանէ քումէ եւ ժառանգակից արքայութեան երկնից ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում վայելեն փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:„*

Սա կոկիկ աղօթքը վերջապէս անշուշտ Ն գլուխն գոնէ երկրորդ կէսին կը վերաբերի cum grano salis.

“Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս,[1] որ մեծդ ես ողորմութեամբ եւ առատ պարգեւօք բարերարութեան քո, որ դու քոյին կամօք ի ժամուս յայսմիկ համբերեցեր չարչարանաց, եւ խաչի եւ մահու յաղագս մեղաց մերոց, եւ պարգեւեցեր առաքելոց շնորհեալ Հոգւոյդ սրբոյ երանելեաց Առաքելոցն։ Հաղորդս արա եւ զմեզ, Տէր, աղաչեմք զքեզ, աստուածային պարգեւացդ՝ թողութեան մեղաց եւ ընդունելութեան Հոգւոյդ սրբոյ։„

Տաս զոյգ կ'ընթանայ ըստ իմաստից եւ ըստ բառից Մանդակունեայ Ճաշու Գ ժամուն Քարոզութեան հետ՝

“Միաբան ամենեքեան գոհացարուք զմարդասիրութիւն Աստուծոյ եւ զՓրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, որ ազատեաց զազգս մարդկան ի դատապարտութենէ անիծիցն, եւ եբարձ զմեղս աշխարհի ի ժամուս յայսմիկ խաչիւն իւրով սրբով, եւ շնորհեաց առաքելոց շնորհեալ Հոգւոյն սրբոյ երանելեաց Առաքելոցն։ Խնդրեսցուք հաւատով, զի զմեզ զամենեսեան արասցէ հաղորդս մեծամեծաց եւ աստուածային պարգեւացն այնոցիկ . . .։„

Խոսրով Հայրապետ պատարագամատուցին ան աղօթքը՝ որ կ'ըսէ “Խաղաղութեամբ քով, Քրիստոս Փրկիչ մեր, որ ի վեր է քան զամենայն միտս եւ զբանս, ամրացո զմեզ,[2] եւ աներկիւղ պահեա յամենայն չարէ. հաւասարեցո զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո՝ որք հոգւով եւ ճշմարտութեամբ քեզ երկիր պագանեն. վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայելէ փառք„ եւն. անանկ կը համարի թէ յառաջագոյն դիւահալած կը վերաբերէր, բայց ետքը այլեւայլ փոփոխութեամբ աս կերպարանաց մէջ եկած է։ “Որիշ ի ժողովրդենէն աղօթել հրամայէ լսելոցն ի դիւաց։ Այլ զի հատուածաց ասի այժմ աղօթքն, ի հնութենէ յեղեալ են բանքն. զի յառաջ այսպէս իմանի լեալ՝ “Ամրացո զսոսա,„ եւ թէ „հաւասարեցո զսոսա ընդ ճշմարիտ երկրպագուս քո . . . եւ թուի թէ որ վասն դիւահալածին աղօթէին՝ այսպէս ասէին. “Ամրացո եւ աներկիւղ պահեա ի չարէն,„ իսկ այժմ ասեմք “յամենայն չարէ։„

Սակայն չ'երեւար որ հոն յառաջագոյն “ի չարէն„ եղած ըլլայ. “յամենայն չարէ„ սոյն շատ հին ասութիւն է,[3] Առաք. Սհմնդր. պատարագին աղօթից մէջ ալ գործածուած։ Սակայն եւ այնպէս չենք կրնար Խոսրովայ յայսմ ընդդիմանալ որ այն աղօթքը դիւահալաց վրայ զրուցուած չըլլայ՝ բայց եթէ ասոր համար որ եթէ այսչափ հին աղօթք ըլլար, ըստ սովորութեան կարի հին Պատարագամատուցաց, մանաւանդ Հօր Աստուծոյ յանուն Քրիստոսի ուղղուած պիտ'որ ըլլար։ Սակայն ինչպէս ինքն այլեւայլ փոփոխութիւն յայսմ եղած կ'ենթադրէ, կրնայ նաեւ սոյն փոփոխութիւնս ալ ենթադրուիլ։

Ապաշխարողաց նկատմամբ ծանօթ է թէ Բիւզանդեան պատարագներուն եւ ոչ մէկն այսօրուան օրս Ապաշխարողաց վրայ եղած աղօթք ունի երախայից արձակմանէն ետքը։ Հայոց քով Ցունաց մէջ ապաշխարողական կարգերը վեր-

[1] Առաք. Սհմնդր. Դիւահարաց վրայ աղօթքն ալ առ Որդի ուղղուած է։

[2] Վերյիշեալը Մանդակունեայ Բ. Ճաշու Բ. դրուագին սկիզբը կը յիշեցընէ՝ “Երկնաւոր խաղաղութեամբ քով պարսպեալ պահեա զանձինս մեր Տէր զօրութեանց։„

[3] Ῥῦσαι αὐτὴν (ἐκκλ.) ἀπὸ παντὸς πονηροῦ. Առաք. Սհմ. Ը. գլ. 26։

նալէն վար մը ետքը կը տեսնենք որ նոյները դեռ ի գործածութեան են, նոյն իսկ Ե դարուն կէսէն թէ առաջ եւ թէ ետքը՝ եղած կանոնաց հաւաքմանց մէջ կը տեսնենք։ Հին պատարագին հատակոտորներուն մէջ սարկաւագը զԱպաշխարողս դուրս կը հանէ "Մի ոք յերախայից" եւն ըսելով։ Բայց ո՞ւր է ան աղօթքը՝ որն որ իրենց վրայ կ'ըլլուէր, դուրս չելած։ Դարձեալ վերյիշեալ մատենուն պէս, անշուշտ Մանդակունւոյն գրչէն ելած, Ապաշխարողաց վրայ աղօթքն ունինք իրեն նախընթաց Քարոզութեամբը հետեւեալ կերպով՝ որն որ ալ պատարագին մէջ չենք կրնար փնտռել. վասն զի արդէն գոնէ Ը դարէն այն հրապարակական ապաշխարութեան աստիճանները դադրած են նաեւ Հայաստան, մինակ Մեծ պահոց Ա. հինգշաբթիէն մինչեւ Մեծշաբաթու հինգշաբթին ապաշխարողք կ'ընդունուէին, եւ անոր համար վերյիշեալ աղօթքը ուրիշ եկեղեցական գրոց մէջ պահուեցաւ։

Քարոզութիւն. "Եկեալքս ի խոստովանութիւն ապաշխարութեան հաւատով՝ զայս Միածնի Որդւոյն Աստուծոյ դիցուք ի սիրտս մեր, խնդրելով ի նմանէ զքաւութիւն եւ զթողութիւն յանցանաց մերոց։ Վասն զի նա ինքն է նախախնամողն Աստուած յաւիտենական, որ եկն կամաւ Հաւր ի փրկել զարարածս, եւ ասաց զինքն լինել քաւիչ մեղաւորաց, յոյս ապաշխարողաց. շնորհելով հանգիստ աշխատելոց, ընդունելով զծանրաբեռնեալս[1] եւ զտաժանեալսն մեղօք յապաշխարութիւն քաւութեան։ Արդ եկայք ամենքեան խոնարհեալ անձամբ բեկեալ սրտիւք անկցուք եւ լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ. զի անցուսցէ ի մէնջ զպատուհաս յանցանաց մերոց բարերարութեամբն իւրով։[2]

"Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա։[3]

(Ժողովուրդն. Կեցո եւ ողորմեաց մեզ։)

"Աղօթք (ձեռն դնելով). Տէր Աստուած փրկութեան մերոյ, որ ողորմած ես եւ գթած, երկայնամիտ եւ բազումողորմ, եւ զղջանաս ի վերայ չարեաց մարդկան, որ ոչ կամիս զմահ մեղաւորին, այլ դառնալ նորա ի չար ճանապարհէն եւ զկեալն։ Դու, Տէր, առատ մարդասիրութեամբդ քով մխիթարեա զծառայքս քո, եւ տուր սոցա տեղի ապաշխարութեան. հաշտեա մարդասիրութեամբ քով, եւ արա զսոսա անդամս եկեղեցւոյ քո սրբոյ. որպէս զի առողջացեալք հոգւով, խոստովանութեամբ եւ ապաշխարութեամբ, մացեն յեկեղեցի քո սուրբ, եւ ընդ ժողովրդեան քում քեզ հանցեն զաւրհնութիւն եւ զփառս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։ (Ժողովուրդն.) Ամէն։"

Սակայն աւելի հնագոյն, այսինքն Մանդակունիէն յառաջ, գործածուած աղօթից ձեւն է անշուշտ՝ զոյն որ մեզի պահած է Խոսրով։

---

1 Խոսր. "ծանրաբեռնս։"

2 Բարերարութեամբն իւրով" չիք առ Խոսր.։

3 Խոսր. "ողորմեա մեզ։"

*«Աստուած բարձրեալ գովեալ եւ փառաւորեալ, որ երկայնամիտ ես քաղցրութեամբ քով, բազումողորմ եւ բազմաշնորհ ես առ ամենեսեան՝ որ կարդան առ քեզ, եւ խնդրեն ի քէն զքաւութիւն եւ զթողութիւն յանցանաց։ Արդ ողորմեաց, Աստուած, ի վերայ ապաշխարողաց, եւ ընկալ զնոցա զաղօթս, զխնդրուածս, զպաղատանս, զխոստովանութիւնս, գթութեամբ քո թող նոցա զմեղս եւ զյանցանս եւ զպարտիս. մարդասիրութեամբ քո բժշկեա զվէրս, զհարուածս, զբեկումն՝ որ եղեւ ի նենգութենէ թշնամւոյն եւ ի մոլար խաբէութենէ նորա.[1] որպէս զի սոքա միւսանգամ առողջացեալք հոգւով եւ մարմնով՝[2] մտցեն յեկեղեցի քո սուրբ, եւ ընդ ժողովրդեան քում հանցեն զաւրհնութիւն եւ զփառս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ յաւիտեանս։»* (Ժողովուրդն. Ամէն։)

*Թէ լեզուովը եւ թէ պարունակութեամբն ասիկա վերինէն հնագոյն է, եւ վերինը (Մանդակունւոյնը) ասոր մէկ նորագոյն եղանակաւորութիւնն է։ Պարունակութեան հնութիւնն Առաք. Սհմնդր. պատարագին մէջի երկայն Քարոզութեան եւ աղօթքին հետ համեմատելով՝ աւելի լուսաւոր կ'երեւայ։*

*Ապաշխարողաց վրայ գործածուած աղօթք ժամագրոց մէջ ունինք՝ որն որ Խոսրովայ քով բաւական տարբեր դարձուածներ ալ մէջն ունի. սակայն երկու կերպարանաց մէջ ալ աս ժամանակին վերաբերելու չափ հնութեան նկարագիր չունի։*

*Ուստի մինակ քանի մը ասութիւնք՝ զորոնք սարկաւագը կ'արտաբերէր երախայից պատարագին վերջը եւ հաւատացելոց պատարագին սկիզբը Վարդապետութենէն անմիջապէս ետքը՝ երբ որ Խորհրդականաց սկիզբը պիտ'որ ըլլար, Ե դարուն պատարագներէն պահուած են մեզի Հայոց Հասարակ պատարագին մէջ՝ զանիկայ խմբագրողին կողմանէ. ասութիւնք՝ որոնք իրենց լեզուաւն իսկ արդէն աչքի կը զարնեն։ Ուստի այսպիսի կտոր մըն է Հայոց Հասարակ պատարագին մէջ հետեւեալը՝*

*«Մի ոք յերախայից եւ մի ոք ի թերահաւատից եւ մի ոք յապաշխարողաց* **Ժպրհեսցի յաստուածային խորհրդոյս։»**[3]

*Քարոզութիւն. «Կացցուք առաջի սրբոյ սեղանոյս ահիւ, մի խղճիւ (եւ) գայթակղութեամբ, մի նենգութեամբ, խորամանկութեամբ, մի պատրանօք եւ խաբէութեամբ, մի երկմտութեամբ թերահաւատութեամբ. այլ ուղիղ վարուք, պարզ մտօք, միամիտ սրտիւ, կատարեալ հաւատով, լցեալ սիրով, առաւելեալք ամենայն գործովք բարութեանց կացցուք (յաղօթս) առաջի սրբոյ սեղանոյս, եւ գտցուք ողորմութիւն յաւուր յայտնութեան (եւ) ի*

---

[1] Յունական աղօթքներուն մէջ՝ օրինակի աղագ. Lit. praesanct. or. sup. Catech. *τῆς παλαιᾶς πλάνης καὶ τῆς μεθοδείας τοῦ ἀντικειμένου.*

[2] Առաք. Սհմնդ. Diac.: *καθαρίσῃ δὲ αὐτοὺς ἀπὸ παντὸς μολυσμοῦ σαρκὸς καὶ πνεύματος* (Բ. Կոր. Է. 1), *καὶ ἑνώσῃ αὐτοὺς ἀποκαταστήσας εἰς τὴν ἁγίαν αὐτοῦ ποίμνην* etc. — Episcopus: *αὐτὸς καὶ νῦν πρόσδεξαι τῶν ἱκετῶν σου τὴν μετάγνωσιν… καὶ ἀποκατάστησον αὐτοὺς τῇ ἁγίᾳ σου ἐκκλησίᾳ ἐν τῇ ἀξίᾳ καὶ τιμῇ διὰ τοῦ Χριστοῦ* etc.

[3] Նորագիրը յետնագոյն յաւելուած կամ փոփոխութիւն է։ Խոսրով քիչ մը այլազգ կը կարդայ, այսինքն «Մի ոք … եւ մի ոք յանապաշխարից մերձ կացցէ կամ հաղորդեսցի»։

*միւսանգամ գալստեան փրկչին մերոյ։„ Ժողովուրդն. “Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեաց մեզ։„*

*Ոճն եւ լեզուն այդչէն հնութեանը կերաշխաւորեն ըստ գոյացութեան։ Ըստ գոյացութեան, վասն զի քանի մը բառերու յետեւառաջութիւնը՝ որն որ ի զանազան ձեռագիրս կերեւայ, եւ կամ մանր փոփոխութիւններ՝ որոնց տակ ինկած է նոյն իսկ Ս գրքուն՝ ի բերանոյ ի բերան երթալով, անտարակուսելի է։*
*Մեր սա հաստատ պատարագամատուցէն յառաջ բերած մասերնիս վերջիշեալ Մանդակունի սա հետեւեալ կերպով կը լսէ սարկաւագին բերնէն՝*

“Լուր եւ զահեղ բողոք քարոզին. Մի ոք յերախայից, ասէ, մի ոք ի թերահաւատից եւ մի ոք յանյուսից։ *Որ ոչ են պատրաստ սրբութեամբ զնոսա արտաքս առաքէ, եւ ի ներքս մնացելոցն աղաղակէ եթէ* Հայեցարուք յանձինս ձեր, եւ զսիրտս ձեր քննեցէք. մի ոխիւ ոք եւ մի նենգութեամբ, մի խորամանգութեամբ ոք եւ մի պատրանօք, մի երկմտութեամբ եւ մի թերահաւատութեամբ մերձեսցի, զի սրբութեան խորհրդոյն սրբոց եւ անարատից լինիցի։„

*Ասկից սաստիկ թէպէտ Քարոզութեան ամբողջը չըլլայ, կը ցուցնէ նախնական վիճակը, դեռ՝ ինչպէս կը կարծենք՝ նոյն իսկ Մանդակունւոյն աւելի յառաջ եւ եթէ եղած մանր փոփոխութիւններէն յառաջ։*
*Աս քարոզէն յառաջ, անմիջապէս Աւետարանէն (եւ Հանգանակէն) ետքը, Քարոզութիւն մը կայ՝ որն որ շատ հին կը հնչէ ըստ նիւթոյն եւ ըստ լեզուին, եւ կրնայ մեր ամենէն հին պատարագներուն վերաբերիլ. սակայն ի հնումն ունեցած գիրքը մեզի անյայտ կը մնայ. եւ է հետեւեալը՝*

*Սարկաւագն. “Եւ եւս հաւատով աղաչեսցուք եւ խնդրեսցուք յԱստուծոյ ի Հօրէ եւ ի Տեառնէ ամենակալէ ի վերայ ժամու(ս) պաշտաման եւ աղօթից,*[1] *զի Աստուած արժանի ընդունելութեան արասցէ։ Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց, ընկալցի զխնդրուածս սրտից մերոց, ողորմեսցի ի վերայ մեր։ Աղօթք մեր եւ խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծութեան նորա, եւ նա տացէ մեզ միաբան հաւատով յարդարութիւն վաստակել, զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր։ Տէր ամենակալ կեցո եւ ողորմեաց մեզ։„*

*Ս գալէն պահուած աւագ հինգշ. օրուան Ապաշխարողաց արձակմամբ Հաղորդութենէ յառաջ կատարուելու աղօթք մ՚ունինք*[2] *որն որ Բարսղի անուամբ ընծայուած է, բայց ոչ իրաւամբք. վասն զի Մանդակունւոյն է, ինչպէս անտարակուսելի կերպով կը ցուցուի ի համեմատութենէ խօսից եւ իմաստից նկարագրական գաղափարաց*[3]*, որուն՝ Հայոց մէջ ցանցառ գտնուած գաղափարներու խիստ կապակցութեամբ գրող սա Հայրապետը՝ պատարագի մը Կանոնէն սկիզբ կ՚առնու։ Աս Կանոնը մէկ երկու տեղ մեր Բ. պատարագը յիշեցնել տալու պէս*

---

[1] Յոյն կանոնաց հայ յաւելուածներուն մէջ՝ որոնք Ե դարուն կը վերաբերին, “պաշտաման եւ աղօթից„ խօսքը հանգիտական խօսք մըն է։

[2] Ժամկրգ. Ա. Հատ. 310, Վիեննա։

[3] Տես Մանդ. էջ 207, տող 3, 9, 17 եւն։

ով կ՚ըսեւայ, բայց չի կրնար որոշ ըսուիլ որ անկէ համառօտած ըլլայ. սակայն ստուգիւ անանկ Կանոն մը կը ցուցընէ՝ որն որ մեր Գ. պատարագին ամենեւին նման չըլլայ, հապա ըլլայ ընդարձակ երկայնաձիգ Կանոն մը։ Տեղ մը բառից եղանակաւորութիւն մը յետնագոյն գրչով եղած կը կասկածուի (թէպէտ ոչ այնչափ ստուգութեամբ), զորն որ տարբեր գրով կը ցուցընենք։

"Տէր Աստուած Հայր ամենակալ, արարիչ երկնի եւ երկրի, որ յակնարկել բարերար կամաց քոց գոյացուցեր զամենայն արարածս, զերեւելիս եւ զաներեւոյթս, զերկնայինս եւ զերկրայինս,[1] եւ նախախնամութեամբ քո ստեղծեր զմարդն ի հողոյ, եւ ըստ պատկերի բարերարութեանդ պատուով մեծարեցեր զնա, շնորհելով նմա զանմահութիւն եւ զանապականութեան զկենդանութիւն, ինքնիշխան կամօք եւ փառօք զարդարեալ պսակեցեր զնա, պարգեւելով նաեւ զվայելումն ուրախութեան դրախտին փափկութեան, գործել զնա եւ պահել եւ հանապազ մշտնջենաւորել յանմահ պարգեւսն եւ յառաջանալ օր ըստ օրէ ի գործս բարիս. եւ յաւելեր նմա զպատուիրանապահութիւն կենսաբեր (Հրամանի բարեբար կամաց քոց). զի յաւելուածով պատուիրանապահութեան առաւել յաւելուածով մեծի փառաց եւ պատուոյ զնա ճոխացուցանէիր եւ ի ձեռն բարեյօժար կամաց հնազանդութեան եւս առաւել ի գերակատար կեանս զնա փոխէիր յիմանալի կայանս բնակութեան վերինն Երուսաղէմի։

"Իսկ նա ի ձեռն (օձապատիր) չարին խաբէութեան զգործի կենացն եւ զպատճառս բարեացն անձնիշխանութեամբն ի կողմն բանսարկուին դարձուցեալ, եւ ինքնայօժար կամօք գործակցեալ խաբէութեան չարին, ի բաց մերժեցաւ ի քումէ (արարչական եւ) կենսաբեր պատուիրանապահութենէդ, եւ ի ներքոյ անկեալ չարին հնազանդութեան, նախամեծար առնելով զվրիպական բանս պատրող թշնամւոյն քան զքո աստուածադիր օրէնսդրութիւնդ, կնոջն լսելով խրատու, կորոյս զտիրական (վեհ) իմաստութիւնն, ոտից հնազանդեալ գլխոյն առաջնորդական տէրութեան, անհանճարաբար եւ անխորհրդապէս ի բաց մերկացաւ զճոխաճաճանչ լուսեղէն զարդարանն։ Եւ հակառակորդ հայթայթանօք ջանայր ծածկել զամօթալիր մերկութիւնն պատառատուն տերեւովն՝ անյուսացեալ ի զօրութիւն ամենակալին՝ կարծէր թաքչել յամենատես գիտութենէ աստուածութեան քոյ պատճառելով զպատճառս մեղաց եթէ Կինս՝ զոր ետուր ինձ, նա եղեւ ինձ պատճառ։ Վասն որոյ զցասուցն եւ զանիծիցն ժառանգեաց զկեանս, ի ներքոյ անկեալ մահու. եւ եւ ապականութեան ըստ անսուտ աստուածային հրամանիդ ասելով եթէ Յաւուր յորում ուտիցէք, մահու մեռանիցիք. որով թագաւորեալ տիրեաց ի վերայ մեր իշխանն մահու, եւ զբնութիւնս մեր գրաւեալ ինքեան հնազանդութեամբ պահակն կորստեան եւ զամենեսեան ծառայս իւր արարեալ, վարէր ի գործս խիստս ծառայութեան դժոխոց։

[1] Մանդակունի, էջ 207, կ՚ըսէ "զերկնաւորս եւ զերկրաւորս։"

«Իսկ դու, Հայր բազմագութ եւ բարերար, յառատ եւ անբաւ մարդասիրութենէ քումմէ յաղթեալ՝ ոչ հանդուրժեցեր տեսանելով զանարատ ձեռին քո ստեղծուածն յայնպիսի վտանգաւոր աղէտս տարակուսանաց։ Այլ բարեգործեալ (հայրական) խնամով սիրոյ քոյ գթացար յորդիս մարդկան, եւ այցելու լեալ կորուսելոյն առաքեցեր ի խնդիր զՄիածին եւ զէակից Հօր զծոցածին եւ զանբաժանելի Բանդ Աստուած, որ եկն եւ էառ զկերպարանս գձձութեան աղքատացեալ բնութեանս մերոյ, ներմարմնացեալ ի սուրբ եւ յանարատ Կուսէն Մարիամայ Աստուածածնէն, եւ յանձն էառ զյանցանս սխալման մեղացն Ադամայ, եւ աստուածախնամ տեսչութեամբ իւրով անօրինեալ զամենայն կիրս մարդկայինս յանձին իւրում, բաց ի մեղաց, եղեւ պատուղ մարդկութեանս։ . . . Տուր մեզ, Տէր Աստուած մեր, զքո ուրախարար եւ զմարդասիրական համբոյրդ, տալով զկնիք սրբութեան ի հոգիս մեր, եւ զմատանին արդարութեան ի հոգիս մեր, եւ զմատանին արդարութեան ապաւորեա յաջոյ ձեռին մերում, միշտ ունելով մեզ զնշան եւ զդրոշմ ուխտին սրբութեան՝ զոր ուխտեցաք միջնորդութեամբ մարմնոյ եւ արեան Որդւոյ քո սիրելոյ . . .։»[1]

Թ դարուն մէջ, գլխաւորաբար կէսերը, աւելի եւս կէսէն եաքը, շատ ցանցառ եղած են չափահաս երախայք։ Անոր համար ալ մեր պատարագին Երախայից մասին մէջ բոլորովին անհետ եղած է երախայից վրայ առանձինն աղօթքը։ Եւ եթէ երախայք գտնուած են, ինչպէս իրօք նոյն դարուն կէսերը գիտենք որ կը գտնուէին,[2] ասոնց վրայ՝ ի միասին ընդ ապաշխարողս, աղօթք կ՚ըլլար՝ աղօթք τῆς χειροθεσίας (ըսուած՝ ընդ ձեռամբ)։ Որուն վրայ զամէնքը մէկէն սարկաւագը դուրս կը հանէր։ Սակայն Ժ դարուն իբր վերջին քառորդին մէջ հետեւեալն էր սա ընդ ձեռամբ եղողներուն վրայ կատարուած աղօթքը (Եւ եւս հաւատով աղաչեսցուք..), մնալով սարկաւագին բերանը՝ աւելի հնագոյն քարոզութիւնը։

Անոր համար Խոսրովայ, Ժ դարուն, առջեւն ունեցած խորհրդատետրը՝ որն որ ճիշդ աս հետեւեալ քարոզութեամբ եւ աղօթքով կը սկսի, կրնանք ապահով ըլլալ որ նաեւ հինգ դար յառաջուան խորհրդատետրէն յայտ չի տարբերէր։ Ուստի սոյն տանուան առ Հայս գործածուած Երախայից պատարագին մասին մէջ՝ սաղմոսներէն ու ընթերցուածներէն եաքը՝ (առանց հանգանակի) կը սկսէր.[3]

«Սարկաւագն. Եւ եւս հաւատով ... ողորմեսցի ի վերայ մեր...։[4]

Քահանայն. (— ի ծածուկ, ուստի եւ զուգընթաց նախընթաց Քարոզութեան սարկաւագին բառերը. —) «Տէր մեր եւ փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծ ես ողորմութեամբ... (ի կատարումն Քարոզին փառս տայ)։»

---

[1] Տես վերը էջ 238 Հաղորդութեան մատուցողներուն իրենք զիրենք կնքելու արարողութեան ակնարկութիւնը։

[2] Տես Եղիշէ, տպ. 1859, էջ 88։

[3] Տես վերը, էջ 272։

[4] Շատ բնական է որ «ի վերայ մեր»ին տեղ՝ երկայն ատեն բռնած ըլլայ «ի վերայ ապաշխարողաց.» մինչեւ որ Զ կամ Է դարէն եաքը կա—

"Քահանայն. Որպէս զի արժանաւորք եղիցուք... այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։[1]

Ժողովուրդն. Ամէն։

Քահանայն. Խաղաղութիւն ամենեցուն։

Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։

Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք։

Ժողովուրդն. Առաջի քո, Տէր. ("եւ խոնարհին ամենքին," կամ "երկրպագէ ժողովուրդն." Լամբր.)

Քահանայն. ("խոնարհի եւ սա," Լամբր.) Խաղաղութեամբ քով Քրիստոս Փրկիչ մեր... այժմ եւ միշտ...։[2]

Ժողովուրդն. Ամէն։"

14. Հոս կ'ըլլայ Մեկնութիւն կամ Խօսք կամ Թարգմանութիւն կամ Վարդապետութիւն ըսուածն եպիսկոպոսէն կամ քահանայէն, ինչպէս կը նշանակէ Խոսրով թէ հոս "բեմբասացութեան տեղի է," բոլորովին համաձայն Առաք. Սհմնդր.[3] (ինչպէս վերը տեսանք։) Սակայն կ'աւելցնէ Անձեւացեաց եպիսկոպոսը թէ հոս (վարդապետութենէ յառաջ) "Օրհնեա, տէր," կ'ըսուի՝ անշուշտ սարկաւագէն։

15. Հոս ըստ Լամբր. քահանայն "Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս" ըսելէն ետքը, ժողովուրդը կը պատասխանէ՝ "Ամէն։" Աս "Ամէն" ցայսօր մեր պատարագամատոյցին մէջ կեցած է. եւ ասով իմաստ կ'առնու Խոսրովայ ըսելը թէ "աւարտին զաղօթսն օրհնութեամբ." վասն զի չէ թէ միայն քահանայն, հապա նաեւ ժողովուրդն օրհնութեան կը ձայնակցի ("Ամէն" ըսելովը)։ Որուն վրայ անմիջապէս կ'աւելցնէ Խոսրով թէ, "ի Վարդապետութեան ունկնդրութիւն տան զանձինս։"

16. Աս Վարդապետութենէն ետքն է որ (ինչպէս Լամբրոնացին կ'ըսէ)

Քահանայն. (դառնայ առ ժողովուրդն եւ հրաման տայ երախայիցն ելանել՝ ասելով)

"Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեան։"

Սարկաւագն. ("ձայնէ բարձր բարբառով." Լամբր.) "Մի ոք յերախայից եւ մի ոք ի Թերահաւատից...։"[4]

Ուստի ի հնումն սարկաւագին զատ զատ զրուցածները՝ հոս բոլորը մէկէն բերուած են։

(Հոս ճշդիւ Հաւատացելոց պատարագը կը սկսի։)

17. Հանուելիքները հանուելէն ետքը, հաւատացելոց հաղորդութեան արժանաւորաց Ընծայները կ'առնուէր. քահանային ձեռաց լուացումը կ'ըլլայ

---

նման որ ապաշխարողաց դասերն ալ պակսելով, հարկ եղած է ըսել "ի վերայ մեր։" — Տես վերը, էջ 273։

[1] Տես վերը, էջ 273։

[2] Անդ։

[3] Բ. գլ. 54։

[4] Տես վերը, էջ 274։

*«Լուացայց սրբութեամբ» սաղմոսով, անդիէն սարկաւագը կը շարունակէր այսպէս՝ «Կացցուք առաջի սրբոյ սեղանոյս...:[1]»*

18. *Սոյն քարոզը՝ Առաջադրութեան* (τῆς προθεσίας) *աղօթքին հետ ընթանալով՝ անոր փառաւորութենէն առաջ կը լմնար. մանաւանդ որ աս փառաւորութենէն ետքը կը յորդորէր սարկաւագը խրատու «Համբոյր սրբութեան» տալու: Նոյն խսկ բովանդակ Քարոզութեան յորդորն ալ՝ որ* **խըզի-, ռէնգո-ըեամք, խոբամանկո-ըեամք** *չըլլայ, հապա պարզ* **ձօճ, մեամբք ուրուն-,** *գլխաւորաբար առ այս համբոյր կը հայի: Առաք. Սհմնդր. Բ. գլ.* 54. ὁ διάκονος... μετὰ ὑψηλῆς φωνῆς λεγέτω: Μήτις κατά τινος, μήτις[2] ἐν ὑποκρίσει... *Նկատմամբ աս* μήτις κατά τινος, μήτες ἐν ὑποκρίσει *կ'ըսէ* Card. Pitra: „Quamvis multae id genus ἐκφωνήσεις in editis liturgiis audiantur, haec tamen ipsa, quibus his verbis concipitur, non superest," *անշուշտ ի բաց առեալ Հայոց պատարագին աս շատ հնագոյն մասին մէջինը: Մարկոսի պատարագին մէջ, թէպէտ սարկաւագը չէ՝ բայց քահանայն համբոյրին աղօթքին մէջ կ'ըսէ՝* ἐν καθαρᾷ καρδίᾳ καὶ συνειδήσει ἀγαθῇ ἀσπασώμεθα ἀλλήλους ἐν φιλήματι ἁγίῳ μὴ ἐν ὑποκρίσει. *Ասոնք նաեւ վերի պարզ* **ձօճն ու մեամբք ուրուն-ն** *ալ կը յիշեցընեն:*

*Աթանասին (մեր սովորական Հասարակ) պատարագին մէջ սարկաւագը «Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան» խօսքին անմիջապէս կը յարէ «Եւ որք ոչ էք կարող հաղորդել, առ դրունս ելէք եւ աղօթեցէք:»* **Ասով՝** *որ նախընթաց «Մի ոք»ին աւելորդ կրկնութիւնն է, առջի բերան իբրեւ այդէն հանուածները նորէն կը հանուին: Սակայն ասիկայ հարկ. ընթերցուածն է: Ձեռագրաց մէջ բաւական տարբեր է աս խօսքը, այսինքն «Որ ոչ կարող էք հաղորդել եւ առ դուրս էք՝ աղօթեցէք:» Ուստի նորէն մարդ դուրս չի հաներ հոս սարկաւագը, հապա ներսիններուն համբոյր յանձնելէն ետքն ան ապաշխարողները՝ որոնք խորհրդական աղօթից հաղորդութենէն զրկուած էին, բայց թոյլ տուեալ էր իրենց՝ որ դրան քով կենալով աղօթից ձայնը լսեն,[3] կը յորդորէ հեռուանց որ աղօթեն: Այսպէս բացայայտ Լամբրոնացւոյն բնագիրը կ'ըսէ. «Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան. որք ոչ կարացեն հաղորդել աստուածային խորհրդոյս եւ առ դրունս են, աղօթեսցեն:» Խոսրովայ ընթերցուածը[4] նոյնը կը հաստատէ ըսելով՝ «Որ ոչ կարող էք հաղորդել՝ ի միմեանց ուսարուք եւ առ դրունս աղօթեցէք:» Ուստի* **Եկեղ-** *խօսք չկայ: Ուրիշ կ'երեւայ, որ տեղն չունի, երբ որ Խոսրով սոյն տեղը սանկ կը մեկնէ. «Ըմնա-քուլքն... ապաքս եղեն, (բայց այդէն ելած էին,) զի չեն արժանի ի հոգեւոր ուրախութեան վայելել, խրատեսցեն զմիմեանս սուրբ Գրովք եւ առ դրունս աղօթեսցեն:» Նոքի ժամանակը բոլորովին անիմանալի ըլլալով սոյն առութիւնը, թողուած է մէկդի, եւ այնպէս չունինք հիմայ մեր Հասարակ պատարագին մէջ, ինչպէս նոյն խսկ ԺԲ դարուն Լամբր. իր Օրինակին մէջ ունեցած պիտ'որ չըլլայ:*

---

[1] Անդ:

[2] Ուրեմն Մանդակունեայն բնագրին մէջի երկրորդ «ոք»ը՝ որն որ հիմայ անհետ եղած է, առանց հիման չէ եղեր: Այսպէս նաեւ Առաք. Սհմնդր. Ը. գլ. 12. *Μήτις τῶν κατηχουμένων... μήτις τῶν ἑτεροδόξων,* ներս մնացողներուն համար կ'ըսէ *Μήτις κατά τινος, μήτις ἐν ὑποκρίσει.*

[3] Դէպք մը՝ զորն որ յն. կանոնաց Ն դարուն Թարգմանիչն իր ըրած յաւելուածներուն մէջ առէջ կը յիշէ, ըսելով՝ «առ դրունն կացցէ, զձայնն միայն լսիցէ:»

[4] «Որ ոչ կարող էք» = *οἱ μὴ δυνάμενοι.* Առաք. Սհմնդր. Ը. 9. *μήτις τῶν μὴ δυναμένων ἡμῖν συνδεηθῆναι.* Jac. XVI.

Ե.

# ՀԱՅՈՑ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑԸ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՍԿԻԶԲՆԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՎԵՐՋԵՐԸ

### ԳԻՏԵԼԻՔ ՆԱԶԻԱՆԶԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԱՑ ՎՐԱՅ

*Նազիանզացի Նուիրագործին առ Ն պատարագ սէրն ու յարգը, նոյն իսկ պատարագին մասնաւոր կատարելութիւնները, Մանդակունւոյն փոյթը Հայկական գոյներով զարդարելով՝ անոր ընծայած յառաջամասնութիւնը պատճառեցան որ սոյն Ն պատարագը մեր Հայերէն առաւել սիրելութեամբ մը գործածուեցաւ:*

*Յիշատակութեանց ու ակնարկութեանց շարակարգութեան մէջ սա դիւրաւ կը դիտուի՝ որ թէպէտ յիշեալ պատարագներն միասին ըլլան եւ մէկ մատեան կազմած ըլլան, սակայն մէկուն՝ մեր Ն. թուարկած պատարագին՝ մասնաւոր յիշումն կ'ըլլայ. անկէ կտորուանք յաճախ միայն կու գան. եւ աս երեւոյթը նոյն իսկ Ն գրքուն կը սկսի: Ղազար կարծես անով պաշարեալ՝ մէկալները կը մոռնայ. եւ իրօք աւելի ետքիններու մէջ ասիկայ զուրիշներն իբրեւ թէ մոռնալ կու տայ: Բայց ասիկայ բուն Հրատարակչէն ծագում ունեցած պիտ'որ ըլլայ՝ ընտրողութեամբ եւ ուրիշներէն աւելի յառաջամասնութեամբ մը:*

*Ասոր համար բնական էր որ, ինչպէս կը կարծենք, քիչ մ'ետքը կրկին եղած է սկզբնական մէկ պատարագաց մատեանը: Մէկ մը՝ համադումար բոլորը միահաղոյն, ինչպէս նախնաբար. մ'ալ Ն պատարագն առանձին գրուած: Աս վերջինը մէկ մը մէկալներէն այսպէս՝ իբրեւ տիրող ի գործածութեան զատուելէն ետքը, ի՞նչ այնչափ բնական է մտածել՝ ինչպէս սա որ առաջին բոլոր պատարագաց մատեանն այնչափ թուով նուազի, որչափ երկրորդը թուով յաւելու, յաճախ ըլլալով պէտքը եւ դիւրին ընդօրինակութիւնը, եւ երթալով նուազի նախնական բովանդակութիւնը: Խոսրով, թէպէտ Ժ դարուն մէջ, ուրիշ շատ պատարագներ կը ճանչնայ, միայն Ն պատարագը կը մեկնէ. որովհետեւ ալ ան էր տիրած: Դարձեալ կ'ըսէ ուրիշ տեղ մը՝ "Յանձնոյն պատարագամատոյցն առաջին աղօթքն վասն մատուցանողին արժանի լինելոյ ասի." որ գրեթէ մասով կը ցուցընէ մեր սկզբնական ամբողջ մատեանն՝ ամէնն ի միասին գտնուած պատարագամատուցաց:*

*Թէպէտ եւ չենք կարծեր որ ան պատարագներով կամ մասերով՝ որուն մէջ ասոնք ի միասին էին, թէ գրողէն՝ զորն որ դեռ պիտ'որ ցուցընենք, եւ թէ*

*Հայաստան Հրատարակողէն դիտուած ըլլայ սանկ բաժանում մը, այլ ամէնքն ալ ըստ պիտոյից եւ ժամանակի՝ գործածութեան համար գրուած եւ թարգմանուած էին. սակայն Հայաստանի մէջ տակաւ Ն պատարագն ան յառաջամանութիւնն առաւ՝ միացածին անունութեամբ, թէեւ առիթ մ'ալ աս անունութեան ի սկզբանէ տրուած չէր Հրատարակչէն։ Կան գի զանիկայ ի մասնաւորի — գուցէ առաջին դիրքն ի մտանին ունենալով եւ անոր յառաջամանութիւն մը տալով էր որ — Հրատարակիչը հայկական յառաջադիր յաւելուածներով զարդարած էր, համառօտութիւնն ու գրութեան գեղեցկութիւնը գերազանց սեպելով, ինչպէս տեսանք. այսինքն ան ամէն յաւելուածներով՝ որոնք կը յառաջեն նախ քան Ողջունի եւ Ընծայման աղօթքը։ (Տես վերը՝ էջ 272)։*

**1.**

*Առ Նօտրագրեան չորս պատարագաց վրայ յիշատակութիւնք եւ ակնարկութիւնք:*

*Արդէն նոյն իսկ միակ մասեանը՝ որուն մէջ աս 5 պատարագք կը գտնուին, ԺԳ դարէ է։*[1]

*Բայց յընթացս ծանօթութեանց՝ զորոնք աս պատարագներուն յարեցինք, կը տեսնուի որ ԺԲ եւ ԺԳ դարուն մեր հինակուան Հասարակ պատարագը բազմաց եղանակաւորողներուն ձեռքը սոյն հին պատարագները կը գտնուին։*[2]

*Իսկ յետ Ժ դարու Ստեփանոս Ասողիկ Յովհաննու Մանդակունւոյն կարգադրութեանց մէջ կը յաւելու՝ "Եւ գերեւելին պատարագամատոյցն՝ զոր Աթանասի ասեն լինել։"*[3] *Ուրեմն Տարոնացի պատմագրին ուրիշ (հայերէն) պատարագամատոյցք ալ ծանօթ են։*

*Անկէ 50 տարի մ'առաջ է որ չէ թէ պատարագամատուցի, հապա բացայայտ "Պատարագամատոյց" խօսքեր կ'ընէ Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոս՝ միայն Ն պատարագամատոյցը, առ հասարակ գործածականը, ծայրէ ծայր մեկնելէն ետքը։*[4] *Ուրիշ տեղ մ'ալ նոյն մատենագիրը յայտնի կ'ընէ ի մասնաւորի,*

---

[1] Տես վերը՝ էջ 81—89։

[2] Տես էջ 222—299 Ծանօթութիւնքն։

[3] Գլ. Բ։ Ամբողջն սանկ է. "Յովհան Մանդակունի՝ որ էր ի գաւառէն Արշամունեաց, ի գեղջէն Ծախնոտայ, զհայոց բազում կարգս ուղղութեան կատարեաց, զքարոզս գիշերի եւ տուընջեան, զկարգս մկրտութեան, զարկաւագի, զքահանայի եւ զեպիսկոպոսի եւ զօրհնութեան եկեղեցւոյ եւ զգլխաւորն պատարագամատոյցն՝ զոր Աթանասի ասեն լինել։" Մատագրութեան արժանի է որ Ժ դարուն դեռ ան սուտ անուններն աս պատարագներուն վրայ գրուած չեն։ "Ասեն լինել" կ'ըսէ. ուրեմն դեռ գրուած չէ, թերեւս բերան բերան պտտող կարծիք մըն է՝ որն որ ետքէն գրով ալ գրուեցաւ աս պատարագին վրայ յանդէպս։ Անկէ յառաջ՝ Յովհ. Կաթողիկոսի՝ աս ենթադրութիւնն անծանօթ է, եւ չէ թէ միսակ հան Աթանաս չի կարդար, հապա ուրիշ անուն՝ մ'որն որ շատոնց անհետ եղած է։

Անշուշտ նոյն տեսններէ հեռու չէ Վարդավառի աղօթք մը չինողը, (որուն վրայ ընդհուպ)։ Հոս Բ պատարագն առջեւն է մեր աղօթամատոյցին, Գ. պատարագն ալ նոյնպէս, որմէ սուղ ինչ կը քաղէ. ով չ'ենթադրեր մեկնիչները։

[4] Վերջար. (տպ. 1869, էջ 64) "Թուղթս եւ բազում են եկեղեցականացն կարգաց զանազանութիւնք, քարոզաց եւ աղօթից եւ Պատարագամատուցաց... զորս բովանդակ բան առ բան ընդ քննութեամբ արկանել, ոչ միայն մեք գրելոյն չլինէաք հանդուրժող, այլ եւ ոչ ընթերցողքն՝ լսելութեան։" Ուրիշ տեղ մ'ալ (անդ՝ էջ 21) "Պատարագ օրհնութեան է՝՝ գի ընծայի Աստուծոյ ի գոհութիւն ամենայն երախտեաց նորա յիւնկըրանց հետէ առ մեզ եկելոց... որ-

*որ ձեռքն է Գ պատարագամատոյցը։[1] Բայց, ինչպէս ըսինք, Ե եւ Գ պատարագամատոյցներէն՝ Բ եւ Դ եւ որ ի կողմին՝ անբաժին են ի ծագման։*

*Հարիւր տարի յառաջ գրած էր Յովհան Կաթողիկոս պատմութեան իր «Շարագրութիւն Հայրապետացն Հայոց» վերագրած (դեռ անտպագիր) գրուածոյն մէջ. «Սա (Յովհ. Մանդակունի) նախադիր գտաւ Հայաստանեայցս ժամակարգութեանց սքանչելապէս յարդարեալ քարոզս եւ աղօթամատոյցս եւ երգ(ս) հոգեւորս ի փառս Աստուծոյ, եւ «Տէր Աստուած զօրութեանց պատարագամատոյցն։» Այսպէս մեր Ե պատարագամատոյցը՝ ուրիշ սկզբնաւորութիւններով պատարագամատուցաց մէջէն մասնաւոր կ'ազատէ ՅԽԵ (= 896) Հայոց թուականին[2] նստող Կաթողիկոսը։*

*Իր ժամանակները, եթէ աւելի յառաջ չէ, Պենտակոստէի աղօթքին իբր նմանողութեամբ՝ Վարդավառի երկայն աղօթքը՝ որն որ Ճաշոցաց մէջ կը գտնուի, մեր առաջիկայ պատարագամատոյցներէն թէ գաղափարներ եւ թէ բառեր եւ խօսքեր առած է գլխաւորաբար Բ բայց նաեւ Գ պատարագամատոյցէն. եւ այնպէս ալ չէ թէ անորոշ պատարագաց բազմաւորութիւնն, հապա նոյն իսկ անոնց ընթերցուածն առջեւնիս կ'ելլէ, թէպէտ բազմօք կը փոխէ ղանիկայ, մեր աղօթամատոյցը, լրեն յստակ ըլլալ ուղելով։ Գրեթէ շօշափելի է որ բոլոր ան պատարագներուն առջեւն ունի սոյն երկու գրուագ ունեցող երկայն աղօթքին խմբագիրը։*

*Չի տարակուսուիր որ աս մեր Խմբագիրը բաւական հին դարուց հայ մըն է՝ որն որ մեր Ճաշոցին մէջ Վարդավառի տօնը մէկալ մեծ տօնից, օրինակի աղագաւ՝ Պենտեկոստէից պէս, զարդարելու համար ձեռով մը կամ երկայն աղօթիւք (որն որ սուտ անուամբ Ոսկեբերանի կը տրուի,) աս մեր պատարագաց գրքին կը դիմէ, գլխաւորաբար Բ պատարագէն նիւթ քաղելով՝ եւր որ անոր առաջին աղօթքէն (տես էջ 222) ուր կայ՝ «Արժանի արարեր զմեզ փառաւորել զքո աՀաւոր եւ զքաղցր անունդ», ինքը կ'ըսէ՝ «Արժանի լիցուք փառաւորել զքո փառաւոր եւ զքաղցր անունդ։» — Նախերգանին ալ (տես էջ 224) սա խօսքէն՝ «Որ զանճառելւոյն գործականեցեր . . . որպէս կամար ինչ ի թռիչս աստուածապէս տարածեալ ի յօդս, եւ զնա երկին անուանեցեր», չինուած է յիշեալ աղօթքին մէջ՝ «Զերկինս գործականեցեր անճառապէս ջրոյից սեռաձեւ(°) ամբայարմար իբրեւ զառագաստ ինչ տարածեալ ընդ օդս։» — Դարձեալ պատարագին նոյն տեղը կան «Եւ զլուսաւորացն զարեգական եւ զլուսնոյ շրջագայութիւնն... ուղեւորել (կամ -էալ) հրամանայրեցեր, զժամանակաց եւ յեղանակաց փոփոխմունս ի նոցանէ յայտնապէս ճանաչել։» Ասոնք սանկ փոխուած են մեր աղօթքին մէջ՝ «Եւ զլուսաւորացն... զի յերկիր անխափան ընծայեցուսցեն զարարչէդ իւրեանց զենամակալութիւն անհանգիստ ընթացիւք, ուստի շրջման յեղանակաց եւ զփոփոխմունս ժամանակաց որ յարեգակնէ եւ ի լուսնոյ եւ յաստեղաց՝ ծանուցեալ լինի։» — Ինչպէս նաեւ (տես էջ 225) Պատարագին սա*

պէս եւ բանք Պատարագամատոյցն յայտ առնեն։» Երրորդ տեղ մ'ալ «Ցամենայն Պատարագամատոյցս առաջին աղօթքն վասն մատուցանողին արժանի լինելոյ առի։» Գրեթէ մասամբ կը ցուցնէ մեր առաջիկայ պատարագը։

[1] «Հրեշտակք ի տեսլենէ փառաց նորա միշտ առնելոյ են։» Համեմատէ Գ պատարագին Նախերգանին վերջերը։

[2] Նոյն իսկ իւր Շարագրութեան մէջ նշանակած թուականն է։ Հայ. Ձեռք. Թ. 3 Վատիկ. Մատենադարանին, թուղթ 254։

խօսքին տեղ՝ "(Զմայլն) առեալ հող յերկրէ ըստ պատկերի քում ստեղծեր, Թագաւոր եւ տէր ի վերայ ամենայն արարածոց կացուցեր՝„ կ'ըսուի աղօթքին մէջ՝ "Տէր եւ Թագաւոր ի վերայ այսօրիկ զմարդն արարեր. զոր առեալ հող ստեղծեր կենդանի ...իշխան եւ իշխեցող ի վերայ ամենայն երկրածնաց զնա կարգեցեր։„ — Նոյնպէս Նախերգանքին սա խօսքը՝ "Կեալ միշտ յաղագս պահպանութեան պատուիրանին շնորհեցեր եւ եդեալ զնա ի դրախտին փափկութեան.„ հոս եղած է՝ "Եւ եդիր զնա ի դրախտին փափկութեան կեալ միշտ ի մէջ անմահ անկոյն։„ — Դարձեալ նոյն պատարագին Կանոնին մասին (էջ 227) այն խօսքը թէ "Օրէնս ետուր դաստիարակս մինչեւ ի Ճշմարտութիւնն, հրեշտակս առաքեցեր յօգնականութիւն, մարգարէս սուրբ Հոգւոյդ արարեր ընդունակս, որովք զոր յապա լինելոց աշխարհի փրկութիւնն քարոզեցեր նախագոյն... եւ ամենայն բնութիւն հայեալ ի խայթոցէն մեղաց կործանեցաւ յերկիր յանխնայ, յորում ոչ օրէնք եւ ոչ մարգարէք ... փրկել զմարդկային ազգակցութիւնս յապականութենէ եւ ի մահու զօրեղութենէ ուժէր։„ Զասոնք սանկ փոխարինելով կը յիշէ աղօթքին խմբագիրը՝ "Այլ այցելեալ նախախնամականաւ սիրով ի դարս եւ ի ժամանակս, ետուր օրէնս, առաքեցեր մարգարէս՝ որք յառաջագոյն աւետարանեցին զխոնարհումն քո ի մեր բնութիւնս։ Եւ քանզի յոյժ կարեւէր խոցեալ էաք ի բանսարկուէն, ոչ օրէնք եւ ոչ մարգարէք կարէր փրկել ի մահու զօրութենէ զմարդկային բնութիւնս։„ — Վերջապէս նոյն խմբագիրը Բ պատարագին Յիշատակաց մէջէն շատ մը բան կը հաւաքէ իր աղօթքին երկրորդ դրուագին մէջ թափելով, աւելի ըստ իմաստից քան ըստ բառից. "Զամենեսեան„ խօսքէն մինչեւ սա խօսքերը՝ "Պահեա զբանաւոր հօտս քո ի գազանաց եւ ի սողնոց, ի թունաւոր ճճեաց եւ ի գլորմանէ, յընկղմութենէ, ի հրկիզութենէ, ի ջրահեղձութենէ, ի [illegible], ի յաւազակաց, ի բռնութենէ հոգւոց եւ յամենայն տարերց վնասակարաց. զի ամենայն գոյակք քում հրամանի հնազանդին։„ — Մտադրութեան արժանի է որ նոտարագիր նշանակեալք բառ առ բառ են եւ նոյն կարգաւ Դ. պատարագամատուցին Յիշատակաց մէջ։ Ինչպէս նաեւ առաջին դրուագը կը յիշեցնէ Բ պատարագին մէջէն սա խօսքովը՝ "Ի[illegible] զբազումս արարեր քեզ աշակերտս։„ Եթէ Դ. պատարագին մեր միակ Օրինակէն թուղթ մ'ինկած ըլլալով՝ անոր Յիշատակաց մասը պակաս չըլլար, շատ հաւանական է որ աղօթքին երկրորդ դրուագին մէջ անոր հետքը կրնայինք ցուցնել, այն որ ըսել է գրեթէ պատարագաց մասանը, վասն զի Դ. պատարագին կտորուանքն ալ չէն պակսիր։ Ի զանազանից ըստ իմաստին ամփոփուած է նոյն մասէնէն՝ "Պահեա Տէր զամենեսեան սուրբ խաչիւ ընդ հովանեաւ սորա (սրբոյ խաչին) զհեռաւորս եւ զմերձաւորս եւ որք ի ծովու են եւ յուղեգնացութեան եւ որք ի [illegible], գերելոցն դարձումն շնորհեա, Տէր, բանտարկելոցն եւ կապելոցն զերծումն, պատերազմ(ող)աց հաւատացելոց յաղթութիւն։ Կործանեա, Տէր, զբերան հերձուածողաց, շիջո զխռովութիւն յօտար թշնամեաց։„

Աս աղօթքը շատ յաճախ Ս. Բարսղի ընծայուած է, ինչպէս կը տեսնուի մեր Մատենադարանին թիւ 43 ձեռագիր Ճաշոցին մէջ,* եւ անկէ մարդ կրնայ տեսնել 1839ին տպագրուած Ժամակարգութեան մէջ. (Հատ. Դ. էջ 628—640։)

* Այժմ Թ. 245, տես Ցուցակ էջ 634 (Թ. 245, § 3 ե)։ ՀՐՏՐ.

*Շատ հեռու չէ Ստ. Սիւնեցի, որն որ իր Աւագ Օրհնութեանց (Ցարութեան) մէջ յայտնապէս նիւթ եւ բառ կ'առնու, երբ որ կ'ըսէ, օրինակի աղագաւ, «Զնիգս դժոխոց պլեցեր հզօրէղապէս.» կամ «Որ էն եւ ես եւ էգ Աստուած:» Սակայն աւելի հնագոյնք մեզի ուրիշ յարգ եւ պէտք ունին:*

*Ցովհան Մամիկոնեան Տարօնոյ պատմութեան մէջ՝ զորն որ իրր 680ին կը դնէ, 7 վկայից խոստածապակաց կը սեպհականէ աղօթք մը — անշուշտ իրմէ յօրինուած — որն որ սանկ կը սկսի. «Տէր Աստուած զօրութեանց եւ արարիչ ամենայն լինելութեանց, որ ստեղծեր» եւն. Ն պատարագէն առնելով:*

*Է. դարուն երկրորդ կէսէն Համազասպայ եւ Սահակայ իշխանաց վաւերական վկայութեան գրոյն մէջ մեր Գ պատարագամատուցէն ըստ մեզ անխաբ նշխար մը կը գտնենք Համազասպայ ընծայուած աղօթքի մը ձեւոյն մէջ: Հոն կ'ըսուի՝ «Զօրավարաց եւ զօրաց Հայաստան աշխարհի բարեյաղթութեան շնորհս պատերազմողացն շնորհեսցես:» Իսկ Գ պատարագին Ցիշատակաց աղօթքը կ'ըսէ՝ «Թագաւորաց ընդդէմ բարբարոսաց բարեյաղթութեան շնորհս. իշխանաց եւ զօրավարաց՝ զնոյն քաջութիւն:» Ցայտնի է որ անմիջական գլութիւն մըն է ասիկայ՝ ընդ ժամանակս թագաւորութեան Լեւոնի Կայսեր եւ Փղարխանոսի արքեպիսկոպոսի Կ. Պոլսի եւ ի հայրապետութեան Ներսեսի (Շինողի) Հայոց Կաթողիկոսի: (Տես Սոփերք, ԺԲ. էջ 79:)*

*Նոյն դարուն առաջին քառորդին մէջ Մաթուսաղայի Սիւնեաց եպիսկոպոսին՝ Եզրի Հայոց Կաթողիկոսին եւ անոր աթոռակիցներուն կողմանէ առ Հերակղ Կայսր գրուած թղթին մէջ Ն պատարագամատուցի հարազատ հետքը կը նշմարուի, ըստ որում կ'ըսէ. «Ճանապարհորդեցաւ (— այսպէս կը կարդայ դեռ Խոսրով ալ. —) ընդ ամենայն կերպս մարդկային կենցաղոյս:» (Տես Սոփ. Օրբել. Հատ. Ա. էջ 167. տպ. Փարիզ:)*

*Զ. դարուն առաջին տասնեակները շինուած Սահակայ Կանոնաց մէջ ո՞վ չի համարիր անտարակուսելի անոր սուտ անուան ապացոյց մ'աւելի՝ երբ որ կը կարդանք Բ պատարագէն առնուած՝ սա խօսքը (Կան. 37.) «Մարմնոյ եւ արեանն Քրիստոսի որ միշտ անծախապէս բաշխի ի մեզ:» Ի՞նչ. Սահակա՞յ պիտ'որ հանէին մեր աս պատարագները: Չէ. շատ է ասիկայ:*

*Բայց ո՛րչափ մտադրութիւն կը շարժէ Փարպեցին Ղազար, յետ Ե. դարու, Վաղարշապատու Կաթողիկէին երէցը, որն որ իր գրուածոց մէջ (ի Պատմութեան եւ ի Թղթին առ Վահան Մամիկոնեան) ունակական ըրած է իրեն գործածել պատուաստելով պատարագամատուցաց բառեր եւ ասութիւնք: Բոլորովին մեր Ն պատարագին յատուկ բառերուն եւ իմաստներուն մէջ կը լողայ Ղազար՝ որուն նկատմամբ ան պիտ'որ ըսենք աս պատարագներուն համար՝ ինչ որ իր նախորդին ի պատմագրութեան՝ Սահառունւոյն նկատմամբ՝ Բարսղի պատարագին համար ըրած ենք:*

*Սա հետեւեալ Ղազարայ խօսքերուն մէջ նոտրագիր նշանակուած եղերք կամ ասութիւնք՝ որոնք մեր Ն պատարագին մէջն ալ կան, աչքի կը զարնեն գլխաւորապէս՝ «Որ եւ յանձն առնուլ ամենայօրէնս փոփոխել ջանալ ընդ նմա ողջունել.» (էջ 87:) — «Զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան սատակէր հզօրէղապէս.» (էջ 226:) — Հինգ անգամ գործածած է՝ «Յօրացուցանեն, կերպարանք, ցուցակ.» (էջ 225.) որ մեր Ն պատարագին «Ձեւ ...ցուցակ» ըսելը կը յիշեցնէ: — Երկու անգամ «փայլակնացայտ.» երկու անգամ*

"Ախտացեալ" բայը (հին տպ. էջ 37. Պատմ. եւ Թղթ. էջ 10. տպ. Էմին) մեր Բ պատառագին մէջ մասնաւոր նշանակութեամբ մը գտնուած, եւ ոչ Բառագիրքներու դեռ ծանօթ. վասն զի հազիւ աս պատառագներէն դուրս երկրորդ անգ մը ան առմամբ գործածուած կրնանք գտնել, այսինքն Մանդակունւոյն քով ու Ղազարայ յառաջ բերուած. բայց աս մատենագիրն ալ (զՄանդակունի) մեր պատառագներուն հետ սերտ կապակցութեան մէջ պիտ'որ սեպենք ընդ հուպ:

Ծանօթ է, նոյն Բ պատառագին Նախերգանին մէջ գտնուած բացագանչութիւնը՝ "Ո՛վ բուռակալացի բանիւ առնել զքո ի մեզ զանբաւ բարերարութեանդ զեղմունս." կամ ինչպէս Ն պատառագն ունի՝ "Ո՛վ որ պանծացի բովանդակել բանիւ զքո...," Ղազար ասէ (Պատմ. էջ 15) Աղանայ Արծրունւոյ՝ իր վարդապետին՝ վրայ գովեստի խօսք մը կը ձեւէ ըսելով. "Զորոյ եւ ոչ բաւական որ է բանի բովանդակել զանբաւ վարուցն զառնն նահատակութիւնն:" Ո՛վ չի սեպեր հոս զանբաւ բառին հոս առած մտքացածոյ գիւղը: Նոյնպէս իր աւ Վահան Թղթին մէջ ըսելը՝ "Իսկ զարմանալի զառնէն զենքելայէ՞ ու բաւական էցէ առնել բանի զգօնութիւնն." (տպ. Վենետիկ. էջ 579:)

Նոյն Ղազար է՝ որն որ Ղեւոնդեանց զրուցել կու տայ (էջ 174.) "Գոհանամք զքէն, Քրիստոս, որ բազում անգամ կենդանարար գառանց անմահական զենմամբ մատակարարեալ անձախորժեան բաշխեցեր ի ձեռաց մերոց:" — Դարձեալ՝ "Աստուած Ճշմարիտ, պարգեւիչ ամենայն լիութեանց" (էջ 233,) յայտնի կը յիշեցընէ յիշեալ պատառագին սկիզբը: — "Հայր մեր", ին նախընթաց քահանայական աղօթքէն առնելով սանկ խօսել կու տայ Ղեւոնդեանց առ նախարարս. "Տայ առնել ձեզ համարձակաձայն պարծանօք թէ..." (տպ. Վենետ. էջ 171:) Ուրիշ տեղ մ'ալ (էջ 224.) "Գոչէ համարձակաձայն բարբառով եւ առէ:" — Վերջապէս ամենայն ինչ կնքելու համար յառաջ բերենք նոյնպէս Ն պատառագէն բերած՝ "Օրհնեալ ընդունելեանն միութիւն ըստ անճառ սուրբ Երրորդութեանն." որոնք Ն պատառագին վերջին աղօթքին խօսքերն են:

Աս նոր պատառագներուն, մասնաւորապէս Ն Պատառագին այսչափ սերտ հարած մեր Կաթողիկէի երկցը, չէ մոռցած դեռ անկէ առաջ գործածած Բարսղի պատառագը՝ որմէ առնելով նոյնին ունակութեամբ կ'ըսէ. "Որոց բազումք ի նենգաւորացն աղաղակէին առ մեծամեծսն անհանգիստ թէ փախեան Հայք անձնատուր լինուք." (հին տպ. 235.) որ առնուած է Բարսղի Նախերգանին վերջերէն:

Կը գտնուին աս շղթային օղերը պքանչելապէս՝ Ղազարայ երեցագոյն ժամանակակցին, Յովհաննու Մանդակունւոյ Հայոց Կաթողիկոսի վկայութեամբքն՝ որոնք բազմապատիկ կ'ակնարկեն աս պատառագներուն համար: Զենք երկարեր հոս ան սուտ վերնագիրներուն համար՝ որոնք զուր կը կորզուին անկէ՝

1. Պենտակոստէից աղօթքն երեք գլուխով — տալով զայն ուրիշ Յովհաննու մը, Ոսկեբերանի առանց հիման, — որն որ ուրիշ բան չէ՝ բայց եթէ Յունաց աղօթամատուցին մէջ մինչեւ հիմայ գտնուած հին աղօթքը "Ծնրադրութեան" (τῆς γονυκλισίας) ըսուած, զորն որ Մանդակունին, ինչպէս շատ Յունաց աղօթքներուն ըրած է, թարգմանած է Ն. դարուն, ընդարձակելով: Անոր ան Հայք յետոյ, այժմու Ճաշոցի կազմութեան ատեններ, (ԺԱ դարուն) իրենց փառքն ուրիշին առեր են: — Աստր մէջ բաւական բացայայտ հետք կայ չէ թէ մինակ մեր Ա պատառագին (Բարսղի), հապա նաեւ Դ եւ Ն

պատարագներուն։ Ինչպէս Գ. դրուագին մէջ կ'աղօթուի[1]՝ "Զերկիր երկին արար, երկնայնոցն զմարդիկ դասակից։„

2. Պենտակոստէից աղօթքին Մանդակունիէն զուր ստացուելուն համար ըսածնիս աւելի եւս կրնամք Ապաշխարողաց աղօթքին Բարսղէ վերագրուելուն համար ինչ որ ըսինք, ուր մեր Մանդակունին աս պատարագներուն հիւթէն կը ծոխանայ խօսելու, եւ բոլորովին ինքն է եւ ոչ ուրիշ մը։

Սոյն աղօթքին սկիզբները մեր Բ եւ Ն պատարագներէն հաւաքուած՝ "Նախախնամութեամբ քո ստեղծեր, — կ'ըսէ, — զմարդն ի հողոյ... ինքնիշխան կամօք եւ փառօք զարդարեցեր պարգեւելով նմա զվայելումն ուրախութեան դրախտին փափկութեան, եւ յանձներ նմա զպատուիրանապահութիւն պատուիրանին կենսաբեր հրամանի բարերար կամաց քո, զի յանձնուածով պատուիրանապահութեան առաւել յանձնուածով մեծի փառաց եւ պատուոյ զնա ծանուցուցանէիր, եւ ի ձեռն բարեյօժար կամացն հնազանդութեան եւս առաւել ի դերակատար կեանսն՝ զնա փոխէիր... (— մեր Մանդակունւոյն յատուկ միայն վայել խօսքեր —) եւ Նա է յեռան օձապատիր լրբին խաբէութեան...։„ Վերջին նոտրագիր նշանակուածը Դ պատարագին մէջն է։ Քիչ մ'ետքը նոյն աղօթքին մէջ կ'ըսէ. "Իշխանական պետութեամբն իջեալ ի սորին սանդարամետս դժոխայնոց ապականելով զզօրութիւն բռնութեան կարծեցեալ իշխանութեան։„ Ասի կը նոյնանայ Ն պատարագին ծանօթ խօսքերուն հետ։

Աս Ապաշխարողաց աղօթքն ալ դէն Ղազարայ խօսքն է։ Դարձեալ Մանդակունւոյ ԻԲ ճառին ("Վասն ի սուրբ Խորհ. մերձենալոյ„) վերջին խօսքերն են՝ "Զի այսպէս ամենայն առաքինութեամբ արժանաւորեսցուք... եւ կատարեալ սրբութեամբ վայելեսցուք յամենասուրբ եւ ի կենարար մարմնոյ եւ յարենէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք եւ զօրութիւն յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։„ Կ'երեւայ թէ ասոնք կը յիշեցընեն՝ "Ի սուրբ եւ ի պատուական մարմնոյ եւ յարենէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ„ ըսուածն Ն պատարագին մէջ։ Բոլորովին մտադրութեան արժանի է Դ պատարագին ան տեղը՝ որ կ'ըսէ "Փրկեա զամենեսեան յամենայն ... վտանգէ եւ յամենայն որոգայթից„ եւն, եւ կը գտնուի Մանդակունւոյ աղօթամատոյցին աղօթքի մը մէջ (վասն մրրկի) բառ բառ, որ Թարգմանչին անձին ակնարկութիւն կու տայ։

Մինչեւ աս բաղդատութեան սահմանին՝ Ն դարուն վերջին քառորդին գլուխը եկած, հարկ է որ հոս ուզենք չուզենք երկաթ ձգենք. Հերակղը սահմանք են։ Վասն զի մեր մատենագրութիւնն ալ յառաջ զմեզ չի թողուր. ոչ Եղիշէ, ոչ Մովսէս, եւ ոչ Յաճախապատում (ետքէն անուն դրուած, եւ հաւանականաբար ԺԱ դարուն Գրիգորի ընծայուած) Ն դարու վերջերը դրուած մատեանք։ Աս խոր լռութիւնը, կենդանի եղբայրներուն օրինակին համեմատելով, դժուարին է շատ՝ պատահական համարել։

## 2.

*Աս պատարագաց վրայ քանի մը դիտողութիւնք:*

Աս մանրակրկիտ ժողված յիշատակութեանց կամ ակնարկութեանց վրայ կշռաքննին նայելով, չէ թէ միայն բոլոր աս նկրքուած՝ այսինքն, ինչպէս ըսինք,

[1] Օրինակ Մատենադարանիս ի Վիեն. Թիւ 13՝ (այժմ Թ. 53)՝ "փառան։„

*ըստ լեզուին, եւ՝ ինչպէս արդէն տեսանք, նաեւ ըստ պարունակութեան, իրարու սերտիւ կապուած պատարագներուն այսչափ բարձր հնութեան վերաբերիլը կը մնայ ապացուցուած. Հապա մի եւ նոյն ատեն քանի մը կարեւոր դիտողութիւնք աս պատարագաց նկատմամբ իբրեւ թէ իրենք իրենցմէ կը բխին։*

*Եթէ ոչինչ ակնարկութիւն, ոչինչ նշմար, ոչինչ հետք ասոնց նկատմամբ Ե դարուն վերջին քառորդէն անդին ասոնց գործածութիւնը կը դուշակէ, յայտնի է, որ ասոնց գրութիւնն ալ (կ'ենթադրուի՝ Հայաստանի մէջ,) աս միջոցին՝ եւ ոչ անկէ յառաջ՝ հրատարակուած պիտ'որ համարինք։ Եթէ ներքին պատճառներով ընդդիմութիւն կայ ասոնց անկէ 30 կամ 40 տարի առաջ ըլլալուն, սուղիւ անկէ 20 տարուան չափ առաջ ըլլալու՝ ամենեւին ներքուստ ընդդիմութիւն մը չկայ։ Սակայն իրօք եղած չեն. վասն զի մեր մատենագրութիւնը (օրինակի աղագաւ՝ Եղիշէ, Մովս. Խորենացի, Սամուէլ, մանաւանդ՝ Յաճախապատում անուամբ մկրտուած՝ բայց նոյն ատեններն գրուած ճառից հաւաքումը եւ այլք) բացարձակապէս ոչինչ որոշ կ'ակնարկեն բառ կամ խօսք. աս խորհութիւնը դժուարաւ կրնայ պատահական համարուիլ, մանաւանդ անկէ ետքի հայ մատենագրութեան օրինակին համեմատելով, ինչպէս քիչ մը յառաջ ալ ակնարկեցինք։*

*Յիշատակութեանց եւ ակնարկութեանց մէջ աս դիւրաւ կը դիտուի որ ասոնցմէ մէկը՝ այսինքն մեր Ե Թուարկածը՝ ի մասնաւորի կը յիշուի. անկէ՝ աւելի կտորուանք կ'առնուին։ Եւ աս երեւոյթը նոյն իսկ Ե դարուն կը սկսի։ Ղազար գրեթէ մոռցած է ուրիշ պատարագները. եւ իրօք ալ վերջապէս նոյն պատարագը դարէ դար գալով՝ գրեթէ մոռցուց մէկալները, ինքը միայն մնալով ամենուն ձեռքը։*

*Կոկկութիւն, գեղեցկութիւն, նաեւ համառօտութիւն աս մեր պատարագին մասնաւոր կատարելութիւնները կրնային համարուիլ. սակայն չենք կարծեր թէ ասոնց համար միա՞յն՝ ասանկ յառաջամասնութիւն մ'առած է աս պատարագամատոյցը։*

*Աս յառաջամասնութիւնը — բաւական յայտնի կ'երեւայ, — իր նախակարգութենէն իրեն եկաւ, մէկալ պատարագամատուցաց մէջ առաջին անդին գրուած ըլլալով։ Աս դասաւորութեան հետեւութիւնը յայտնի՝ ծանօթ է։ Առաջինը մանաւանդ կը գործածուի, մէկալները քիչ։ Գործածութեան համեմատ ընդօրինակութիւնք կ'ըլլան. առաջինը մանաւանդ կ'ընդօրինակուի, ան կը բազմանայ ժամանակաւ. ամբողջ Օրինակներ ալ կը գրուին, բայց երթալով կը քիչնան ասոնք. դժուարագիւտ կ'ըլլան բոլոր աս պատարագները պարունակող Օրինակք. շատ քիչերուն քով կրնան գտնուիլ. անգիւտ կ'ըլլան. մինչեւ անհետ եւ անգոյ ըլլալու վտանգի մէջ կ'իյնան, եւ իրօք կ'ըլլան։ Կորսուածներն ասանկ կորսուած են։ Այսպէս մեր Ե դարուն պատարագաց հաւաքման կրած շատ բնական արկածքը։*

*Բայց մէկ եւ անմիջապէս սկիզբը գտնուող պատարագին ի գործածութեան ըլլալն ուրիշ կողմանէ ալ շատ բնական էր. մեր հիմնական խորհրդատետրին տեղ՝ հիներուն իրենց զօրաւոր յիշողութիւնն էր՝ որուն վրայ վարժանայէք կը պատմուին։[1] Արդեօք քանի՞ երկց Հայաստանի մէջ՝ գրուած պատարագամատոյց*

---

[1] Ղ. Փարպ. Թղթ. տպ. 1873, էջ 605։

կը գործածէր Խորհրդեան ատեն։ Որչափ զօրացընենք մեր Հայոց յիշողութիւնը, սակայն շատերը՝ խիստ շատերն՝ անգամ մը կարգին մէջ առաջին տեղին կեցած պատարագամատոյցը բերնուց սորվելէն ետքը, մէկալնոնք ալ սորվելու պէտք եւ պարտք զ՚ժուարաւ կրնային զգալ։[1] Բայց աս Նախակարգութեան համար ըսուածը դեռ ըսուելիքներէն աւելագոյն հաստատութիւն կ՚առնու։

Պարապ տեղ չէ որ վերը նշանակուած ակնարկութեանց եւ մանր հատուածոց շարքը Յովհաննու Մանդակունւոյ հասաւ, եւ անկէ վեր չկրցաւ անցնիլ։ Աս հաւաքուած ակնարկութեանց կամ յիշատակաց մէջէն արդէն կ՚երեւայ թէ որչափ անհիմն է Աթանասի անունն անուանել աս պատարագին վրայ։ Ժ դարէն առաջ աս անունը չկայ։ Ասողիկ "Աթանասի ասեն լինել" ըսելով ենթադրութիւն կը պատմէ, ինքը "գրուած" չի կարդար, հապա "ասուածը" կը լսէ։ Սակայն կամաց կամաց կպաւ, եւ այնպէս ալ անկէ վար ետքն Օրհնակներուն մէջ նաեւ կը գրուէր եւ դեռ կը գրուի եւ կը տպուի ալ, ամենեւին անցէ չունենալով, "Պատարագամատոյց Աթանասի Աղեքսանդրու հայրապետին։"[2] Այսպէս ալ տանուանցութիւններ կը շինուին։ Ասոր հակառակ ուրիշ մէկուն (Յովհաննու Մանդակունւոյ) անունը կու տան թէ ինքն Ասողիկ եւ թէ անկէ 100 տարի յառաջ Յովհան Կաթողիկոս Պատմաբան, ինչպէս տեսանք իրեն "Ճարագրութեան" մէջ, այսինքն գոնէ իբրեւ կարգադրող կամ ի գործածութիւն տուող՝ աս "Տէր Աստուած զօրութեանց" պատարագամատուցին։ Պատմաբան Կաթողիկոսը միմիայն ասոր վրայ խօսք կ՚ուզէր ընել. վասն զի ան ատեն միայն կար ի գործածութեան. անոր վրայ, ինչպէս մենք ստոյգ կը համարինք, գրուած կը կարդար թէ՛ ինքն եւ թէ՛ Ասողիկ. ուրիշ եկեղեցական կարգաց գրքին հետ[3] որուն գլուխը "Յովհաննու Մանդակունւոյ Հայոց Կաթողիկոսի. գրուած էր, աս ալ յարակից կը տեսնէին (տես վարը)։ Մեզի համար երկուքին ալ վկայութեան մէջ մեծագին կէտը աս է որ Յովհաննու Մանդակունւոյ անունն աս պատարագամատուցին հետ կապակցութեան մէջ կը ձգեն երկու պատմիչք ալ, եւ աս պատարագամատոյցն ալ իրենցմէ 400 տարի առաջ, ուրիշ չորս հինգ պատարագներու հետ միասին կը գտնուէր։ Բայց եթէ այս պատմիչք սոյն վկայութիւնը մեզի տուած ալ չըլլային, արդէն իրենցմէ անկախ՝ մենք տեսած էինք եւ պէտք էր ամենայն ոք տեսնել անվրէպ Մեծի Մանդակունւոյն մասը՝ աս պատարագամատուցին սկիզբն անունը գրուած կամ չգրուած։* Կ՚իմանանք ան երկու աղօթքը՝ որոնք նախընթաց կ՚ըլլան "Տէր Աստուած զօրութեանց" աղօթքով սկսող բուն պատարագամատուցին՝ որուն ինքը հեղինակ չէ, հապա

---

[1] Շնորհալի Ընդհ. Թղթոյն մէջ "Ու քահանայք" ուղղելով խօսքը, ցուցնելով կը յիշէ շատ քահանայից տգիտութիւնը՝ որոնք պատարագի աղօթքներն անգամ չեն գիտեր բերանոյ, մինչդեռ կը վայլէր "ըստ աւանդութեան կանոնէ հարցն սրբոց" բոլոր աղօթսն ալ գիտնալ։

[2] Աղեքսանդրիոյ պատարագը՝ "Մարկոսի" ըսուած՝ ծանօթ է. անոր յատկութիւններէն եւ ոչ ստուեր մ՚ունի մերը։

[3] Յովհան Կաթողիկոս, ան Մաշկեցին՝ որն որ Նոր հաւաքում մ՚ըրաւ եկեղեցական պաշտամանց, յաջորդն է միանգամայն եւ աշակերտ. շատ մասեանններ կրնար տեսնել աս Սեւանայ Վանաց հօր քով եղած ատեն՝ որոնք անկէ ետքը լուծան գացին, նոր հաւաքում մը տակաւ տիրելով։

* Հմմտ. "Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն ժամանակագրական" (Ս. Պետերբուրգ, 1867), որուն մէջ (էջ 34) յառաջ կը բերուի "...Աղօթամատոյցն Սահակայ եւ Մեսրոպայ, Պատարագն սուրբ Մանդակունւոյն։" Այս Մխիթարայ վկայութենէն կը տեսնուի, ըստ մեզ, որ Մանդակունւոյ անունը գոնէ Սարկաւագ վարդապետի ժամանակ կար ծնուագիր Պատարագամատուցաց վրայ եւ նոյն գրոց ժողովածոյից մէջ կ՚ընդօրինակուէր: ՀՐՏՐ :

*մինակ ան երկու աղօթքներուն։ Աս երկու աղօթքները պատարագամատուցաց հաւաքման մէջ հարկաւ մինակ սկիզբը կեցող պատարագամատուցին գլուխը կը դրուէին ան ժխտմամբ որ մէկալներնոց ալ արժէ, երբ որ գործածուէին։ Այսպէս աս երկու նախնաբար իրեն նախակարգեալ աղօթքներէն զատ յաւելուած մը չընդունելով գործածուեցաւ աս պատարագամատոյցը մինչեւ ԺԱ դար, եւ նոյնպէս գրուած կը գտնենք զանիկայ Ժ դարուն կէսին Խոսրովու քով, ինչպէս որ ի սկզբան հրատարակուեցաւ։ Մէկալնոց եւ ոչ մէկուն գլուխը ներգործութեամբ գրուած կան աս աղօթքները՝ որոնք աղօթից զոյգ մը կը կազմեն ընթերցուածներէն ետքը։*

*Աս երկու կարճ աղօթքները բոլորովին Մանդակունի կը հնչեն. կատարեալ իրեն պարկէն ելած ալիւր է։ Առաջինին արդէն իր անունը բացայայտ գլուխը գրուած "երրորդ ճաշու ժամու" առաջին Քարոզութեան մէջ կը գտնենք։*[1] *Երկրորդին մէջն ալ իրեն սեփական ասութիւնք կան*[2]*։ Առնցմէ երկրորդը խաղաղութեան ողջունին յարակից աղօթք մըն է՝ որն որ ի ծունր իջեալ ժողովրդեան վրայ կ՚ըսուի, որուն եպիսկոպոսական օրհնութեամբ սարկաւագին հրաւիրէն ("Օրհնեա, Տէր" ըսելէն) ետքը կը հետեւի բեմբասացութիւնը։*[3] *Այսպէս խաղաղութեան ողջոյնին իր բեմբասացութեան կամ վարդապետութեան նախընթաց կ՚ըլլէր Յովհան Մանդակունի ընթերցուածներէն ետքը՝ ականատես եւ ականջալուր Փարպեցւոյն վկայութեամբ։*[4]

*Այսպէս իրարու ձայն կու տան արտաքին եւ ներքին վկայութիւնք թէ աս պատարագամատոյցը, անոր հետ մէկալնոնք ալ, աս անխառն եւ եռանդուն Հայրապետին պտղական են։*

*Սակայն սուտ գիր իբրեւ անոնց հեղինակի՝ ոչ երբեք։ Եթէ Ասողկան խօսքերը ճշդիւ առնունք, զանիկայ հեղինակ չեն յայտներ, հապա մանաւանդ թէ կը ժխտեն անոր սաստիկ երկասիրութիւն մը։ Պատմաբան Յովհաննու Կաթողիկոսի "յօրինեալ" ըսելը շատ տարտամ է. եթէ ասով կ՚իմանայ "շարագրեալ", սուտ գիր կ՚անգիտանայ, որն որ իրեն համար անտեղի բան չէ։ Տարօնց վարդապետը 500, Պատմաբան Կաթողիկոսը 400 տարի յառաջ եղած աս պատարագներուն ծագման վրայ ճիշդ տեղեկութիւն մը չունէին։ Մեզի համար, եթէ ուրիշ ամե-*

---

[1] Համեմատելու է աս երկու աղօթքները՝

| Յովհաննու Մանդակունւոյ Երրորդ ճաշու ժամու (ի Ճամագիրս) Քարոզութիւն։ | Պատարագամատոյցին Աղօթքը։ |
|---|---|
| "Միայն անմեղական գահացարաւք զմարգարտեալն Աստուծոյ եւ զՓրկչէն մերոյ Յիսուսէ Քրիստոսէ, որ ազատեաց զազգս մարդկան ի դատապարտութենէ անիծիցն եւ երարձ զմեզ աշխարհի ի մահուան յայտնի խաչիւն իւրով արեամբ եւ չարչարանաց աստուածէս զգայրեալ Հօրն որոյ երանելի առաքելոցն։ Խնդրեցուք համատով, զի զմեզ զածնեալն արժանի հաղորդս ծածկոյ եւ աստուածային բարեացն այնոցիկ... որպէս զի... մնան եւ վիճակ ընկալցուք...." | "Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծդ ես ողորմութեամբ եւ առատ պարգեւօք բարերարութեան քո, որ դու քոյին կամաւ ի ժամու յայսմիկ համբերեցեր չարչարանաց, խաչի եւ մահու յաղագս մեղաց մերոց եւ պարգեւեցեր առատապէս զպարգեւս Հոգւոյդ որոյ երանելի առաքելոցն։ Հաղորդս արա եւ զմեզ, Տէր, աղաչեմք զքեզ, աստուածային պարգեւացդ թողութ. մեղ. եւ ընդունել. Հ. ար. որպէս զի արժանի եղիցուք գոհութեամբ...." |

[2] Նմանութեան եւ գաղափարաց կողմանէ կը զուգի աս երկրորդ գրուածը՝ Մանդակունւոյն երկրորդ ճաշու ժամուն մէջ գտնուած աղօթից երկրորդ գրուածին։ Թէ՛ հոն եւ թէ՛ հոս խաղաղութեան եւ երկրպագութեան գաղափարներ են։ Նոյն խաղաղութեան վրայ կը դառնայ իններորդ ժամու աղօթից գրուածն ալ։

[3] "Յայսմ տեղի, — կ՚ըսէ Խոսրով (էջ 8) — ուր՝ որպէս յարձակել զժողովուրդն՝ Օրհնեա, Տէր. զի բեմբասացութեան տեղի է, եւ աւարտեն զաղօթսն օրհնութեամբ, եւ ի վարդապետութեանն յունկնդրութիւն տան զանձինս։"

[4] "Ակսեալ ինքն ի տեղի լռութեանն առտիճանին, եւ տուեալ զխաղաղութեանն ողջոյնն եւ ասէր. Բազում կերպարանօք եւ ազգի ազգի ցուցակութեամբք Փրկիչն մեր եւ Տէր Յիսուս Քրիստոս" եւն. (Ղ. Փարպ., Բ. տպ. էջ 548։)

*ներին քննադատական կէտ* (criterium) *մ'ալ չունենայինք, ընդհանուր հայկական մատենագրութեան առջեւը, այսպէս ըսենք՝* logique*ը կամ գաղափարաց ընթացքն ու ճաշակն առջեւնիս ըլլալով, ոչ երբեք կրնար գալ մեզի սանկ մտածութիւն մը՝ ատ պատարագներէն գոնէ մէկուն, նաեւ մեզի սովորական եղածին, հայկական ծագում ընծայել: Բայց բարեբախտութեամբ սանկ՝ ոմանց համար դուցէ խնդրական՝ քննադատութեան մնացած չենք:*

*Հարկաւոր չէ եկեղեցական մատենագրութեան եւ հրամանակարգ վարդապետութեան տակաւ յառաջադիմութեան կամ պատմութեան. շատ խորունկ տեղեկութիւն՝ զգալու եւ համոզուելու համար որ Հայաստանէն դուրս է անոնց հայրենիքը, յունական է ծագումը. եւ ձեռքերնիս թարգմանութիւն մը է՝ որ ունինք երջանիկ պատահմամբ մը, եւ մեր քովը — անոնց հրատարակչէն կամ ի գործածութեան հանողէն ետքը (գործ մը՝ որն որ իշխանութիւն մը եւ ընդհանրական իշխանութիւն մը կը պահանջէր,) ուրիշ բան չի մնար փնտռելու՝ բայց եթէ անոնց թարգմանիչը՝ որն որ, եթէ ան մանր՝ բայց բազմաթիւ նշանները չեն ստեր, հրատարակչէն հեռու չէ. Նոյն իսկ Հայոց Կաթողիկոսն է՝ որն որ "զՀայոց բարձում կարգս ուղղութեան կատարեաց:"[1] Հայ լեզուն, իրեն պէս, հնոյն եւ նորոյն միջասահման է. սով նոր սերնդեան ճաշակը կը փայփայէ ատ գերազանցապէս գործնական մարդը, սակայն տեղ տեղ զգալ տալով մեզի որ ինքը նախնական շրջանին մէջ ապրողներուն կենակիցն է եւ "Գիւտոյ Հայոց Կաթողիկոսի եղբօրորդի:"[2] Թէպէտ բնագիրը ձեռքերնիս չունենանք, ունինք՝ ճիշդ դիտելով՝ տեղեր, ուր զարմանալի ճշգրտութիւն կամ սուր ճշդութիւն* (précision) *մը յայտնի կը տեսնուի ի բանի թարգմանութեան՝ որն որ շատ յաճախ չէ մեր հիններուն քով: Ամէն բան վճիտ եւ լուսաւոր, մանաւանդ պատարագամատուցին մէջ՝ որն որ մեկնողաց չափ գրչագիրներէն խանգարուած չէ: Ասով կ'ըլլայ որ ատ պատարագներուն եւ նախընթաց՝ այսինքն Ն դարուն առաջին կիսոյն՝ պատարագին մէջ կը մնայ, ըստ հայկական լեզուի եւ ըստ թարգմանութեան արուեստի, բաւական վիհ մը, թէպէտ երկու կողման բնագիրք ոչ ժամանակաւ եւ ոչ վայրօք այնչափ իրարմէ հեռու եղած ըլլան:*

*Յունական ծագման գալով, թէպէտ ստոյգ ըլլայ ասիկայ նաեւ առանց բնագրաց՝ որոնք հիմայ չկան, եւ առանց յիշատակութեանց եւ որոշ ակնարկութեանց՝ արտաքոյ Հայաստանի (վասն զի գոնեայ այսպիսիք կրնային դիւրաւ գտնուիլ): Թէպէտ ստոյգ ըլլայ, կ'ըսենք, առանց ատոնց ալ. սակայն շատ ախորժական եղաւ մեզի — կը կարծենք՝ ըլլայ նոյնպէս ամէնուն, — գոնէ մասնիկ մը, պատառիկ մը ատոնց յունարէն բնագրէն առջեւնիս ունենալ: Բարսեղեան պատարագը Բիւզանդեանց գործածութեան համաձայնցընողներն ատ մեր պատարագները ձեռքերնին ունէին եղեր: Մեր Գ. պատարագին առաջին աղօթքը հոն առեր են սուղ փոփոխութեամբ մը՝ որոշ ունենալով աղօթից թիւը բազմացնելու.*[3] *անկէ անցած է անշուշտ Յակոբայ պատարագին սկիզբը հաւաքուած աղօթից կարգը, ինչպէս նաեւ Յոյն-Աղեքսանդրական Բարսեղեան պատարագին*

---

[1] Չենք բանաքաղեր զնեղ, չենք թախանձեր ընթերցողները հաւանութիւններն ուղելու. կը թողունք որ քայլ առ քայլ թէ՛ յընթացս առաջիկայ երկասիրութեանս եւ թէ՛ անոր մէկ երկրորդ մասին մէջ, սոր ապացուցութիւնն առաքանայ:

[2] Թուղթ Ղ. փարպ. առ Վահ. (տպ. Վենետ. 1873, էջ 595:)

[3] Տես վերը, էջ 192, Հատ. Է, էջ 222, Ծան. Ն:

մէջ Բարսղի անունը վրան վերնագիր ունենալով ։ Երկրորդ կտոր մը մեր Բ պատարագին Նախերգանքէն տարուած խոթուած է Բարսղի Նախերգանքին մէջ՝ ոչ սակաւ Բարսեղեան բնագիրը խանգարելով ։ Փոքր է աս կտորը, բայց ուրիշ տեղէ հոն տարուած ըլլալուն անկասկածութիւնը մեր առաջարկութեան համար մեծ նշանակութիւն ունի։[1]

Այսպէս յօրինուած են աս պատարագները. Ե դարուն հոլովելու ատենները, երբ 480ին, հայերէն կը թարգմանուէին։ Բիւզանդեանք իրենց պատարագներուն ձօն proanaphoriale մաս մը յարելու տեսն զատոնք, գոնէ մէկը, ձեռքերնին ունէին։ Ո՞րբ կրնայ ըլլալ ուրեմն աս պատարագներուն ծագումը։ Աս երկու յիշեալ դէպքերուն իրենք իրենց մնալով, ոչ ոք անոնցմով կը սորվի որ աս պատարագաց ծագումը Ե դարէն վեր տանի։ Ասոր համար ասկէ անդին կը մնայ, նոյն իսկ իրենց մէջ — մեր Դ կամ Ե պատարագներուն մէջ — փնտռել իրենց թէ ժամանակը, թէ հայրենիքն ի մանաւորի, եւ թէ վերջապէս անոնց յարդարիչը։ Ասոնց նկատմամբ մեր պատարագամատոյց, ինչպէս քայլ առ քայլ տեսանք եւ ինչպէս պիտ'որ տեսնենք, երկմտութիւն մը չեն թողուր։

## 3.

*Քանի մ'ուրիշ Գիտելիք աս Պատարագաց վրայ առ հասարակ եւ ի մասնաւորի:*

Ահաւասիկ 5 պատարագք՝ որոնք նկլքուստ եւ սրտաքուստ, ինչպէս տեսանք, իրարու կը վերաբերին։ Զուր կը բաժնեն զանոնք իրարմէ՝ մեր շատ հին թուականչունեցող մատեաններն անանկ վերնագրութեամբք՝ որոնք, եթէ ստոյգ ըլլան, երեք այլեւայլ նահանգներու պիտ'որ բաժնուէին աս մեր պատարագները — Հայաստան, Եգիպտոս կամ Աղեքսանդրիա, Գամիրք կամ Պոնտոս։ Մի միայն է՝ որն ստոյգ վերնագրութիւն մ'ունի, ան ալ է հոս վերջին տեղը առորագրուած պատարագին գլուխը, այսինքն Գրիգոր Նազիանզացւոյ կամ Թաւմատուրգոսի անունը։ Ուստի ոչինչ համարելով ան սուտ վերնագրութիւնները — որոնք Բարսղինը՝ շատ անգիտութեամբ՝ Գրիգորի Լուսաւորչի կընծայեն, միւս մը Սահակայ Պարթեւի Հայոց Կաթողիկոսի պարգեւելով, մէյ մէկ ալ Աթանասի եւ Կիւրղի Աղեքսանդրու Հայրապետաց, — հարկ է բոլորը միեւնոյն եկեղեցական գաւառի ժողվել, այսինքն Կապադովկիոյ եւ Պոնտոսի, ուստի՝ ինչպէս ուրիշ շատ բաներ՝ կը ժառանգեն Հայք աս Պատարագներն ալ, բայց հոգիւ զանոնք պահելու չափ։

Թէ առնք Հայաստան, ըստ որում մէկ գրչէ թարգմանուած, մէկ մատեան կամ հաւաքում մը կը կազմէին ի սկզբանէ, դժուարաւ կրնայ տարակուսիլ։ Գործածողներն ալ, ինչպէս ցայսվայր տեսանք, քանի մը հատը միջէն առջեւնին ունէին։ Նոյն իսկ զատոնք Լուգդունեան մատենին սկզբնական հաւաքողին քով միանգամայն ի միասին գտնելնիս հաւանականութիւն մ'ունելի կընծայէ թէ

---

[1] Երրորդ ակնարկութեան մը համար, տես վերը՝ էջ 132, Ծան. 44 եւ էջ 227։ — Բայց աստի արդէն Աթանասի անուն կրող Պատարագը կը գտնուի նախ առաջներն, (տես վերը՝ էջ 270–271), որով կը ցուցուի անոր յունարէն բնագրին գոյութիւնն ալ: Կրկին հատուած ալ Իգնատիոսի, քով կան (տես էջ 263, եւ յետոյ ի կարգին ծան. 63 եւ 112:) ՀՐՏՐ.

այսպէս ալ գտած է զանոնք, չէ թէ մէկը հոս մէկալը հոն։ Միշտ ի բաց կ'առնունք Բարսղի (Ա) պատարագը՝ որն որ Ն դարուն վերջերու թարգմանչէն չի վերաբերիր. վասն զի պէտք ալ չունէր նոյնը թարգմանելու՝ որովհետեւ արդէն 60—70 տարուընէ հետէ Հայոց գործածածն էր։

Սակայն ի՞նչ կ'արգելու զմեզ՝ աւելի առաջ երթալով ըսելու թէ մեր թարգմանիչը միանգամայն հաւաքիչ մը չէր. հապա նոյն իսկ առջեւինն այսպիսի յունարէն պատարագաց ժողովածոյք մըն էր՝ զորն որ հայերէնի կը դարձնէր իր հայրենակցաց համար, որուն մէջ, եթէ մեր Հայք բան մը մէջէն չեն կորսնցուցած, կային վերոյիշեալ 5 պատարագները։ Անոր համար ասոնց հայերէնները մէկտեղ գտնուած են միշտ, վասն զի յունարէններն ալ ասանկ էին։

Արդէն նոյն դարուն՝ ուստի ասոնք ծագումն ունէին, սովորութիւնն էր՝ հաւաքել, մէկ մատենի մը ժողվել եկեղեցական պիտոյից կարեւորները։ Հոս սկզբնաւորութիւն առած է, ինչպէս ծանօթ է, առաջին Կանոնաց ժողովածոյքը՝ Նիկիոյ 20 կանոնները գլուխը դնելով նոյն դարուն մերձաւոր ժողովոց՝ Անկիւրիոյ, Նէոկեսարիոյ եւ Գանգրայ կանոնները մէկ մատենի ժողվերու, որուն ետքէն Լաւոդիկեայ կանոններն ալ ուրիշ ձեռքէ մ'աւելցան. հոս նաեւ՝ Վկայաբանութեանց մատենաւոր ժողովածոյք մը նոյն դարէն, գրեթէ մի եւ նոյն ատեններն հաւաքուած է, որն որ ուրիշ անգամ զմեզ պիտ'որ զբաղեցընէ, եթէ Տէր կամեսցի՝ ոչ կարի անագան։* Ասիկայ ուրեմն աս եկեղեցական նախանձին համեմատ էր, որն որ դժուարաւ կրնար այսչափ կարեւոր նիւթ մը, ինչպէս պատարագներն էին, անտես ընել։ Հիմայ յիշուած ժողովածոյքներուն ժամանակը Դ դարն է իր կատարեալ ընթացքին մէջ։ Կրնայ մեր պատարագաց հաւաքումը նոյն դարուն մէջ եղած ըլլալ, կրնար հինգերորդին մինչեւ կէսերն առ անագանն. վասն զի ա՛լ հայերէն թարգմանութեան ատենը կը շօշափէ։ Բարսղի պատարագը, կ'ըսէ՝ Զ դարուն վերջերը Աֆրիկէի Պետրոս Սարկաւագը "գրեթէ ամենայն Արեւելք ի կիր արկանէր։„ Ասանկ հաւաքման ձեւով, իբրեւ մատեան մը, թեւ կ'առնուն գրութիւնք համբաւ եւ տարածում ընդունելու, ինչպէս վերոյիշեալ կանոնաց ժողովածոյքին եղաւ՝ հաւաքման ձեւով բոլոր արեւելք եւ արեւմուտք թարգմանութեամբ տարածուելով Ե, Զ եւ Է դարերը։ Ի՞նչպէս կրնային Անկիւրիոյ կամ Նէոկեսարիոյ կամ Գանգրայ կանոնք՝ առանձին մնալով՝ այնպէս դիւրաւ ան տարածութիւնն ու կարեւորութիւնն առնուլ զոր այժմ առած են։ Մեր պատարագաց հաւաքման՝ զորն որ իբր ստոյգ կը համարինք, սկիզբը սոյն Բարսղի պատարագը կը բռնէր. հաւանականաբար մէկալոնք, գոնէ բոլորը, մասնաւոր անուններ չկրելով։ Տեսանք որ Աֆրիկեցի Սարկաւագն է [illegible] կտոր մը Բարսղի պատարագէն յառաջ բերել ուզելով՝ կը խառնէ հոն մեր պատարագներուն մէկուն մէջէն հատուած մը՝ որն որ մինչեւ հիմայ խօսուածներուն համեմատ, անմիջապէս Բարսղի պատարագէն ետքը զետեղուած պիտ'որ ըլլայ ան մատենին մէջ, եւ Բարսղին հետ ի միասին կարդացած ըլլալով՝ բոլորը նոյն անուամբ կը յիշէ Աֆրիկեցին։

Լուգդունեան մատենին մէջ աս պատարագաց կարգը սանկ է. Աթանասի, Բարսղի, Գր. Աստուածաբանի (կամ Գր. Նազիանզացւոյ) եւ Սահակայ ըն-

* Արդեամբք ալ հանգուցեալ Հ. Յովսեփեան թողուցած ձեռագիրներուն մէջ շատ մեծ նիւթ կայ ժողոված Վկայաբանութեանց քննութեան մասին. բայց չէ կրցած քննութիւն մը գրելու սկսիլ, բաց ի բազմաթիւ մանր մունր ծանօթագրութիւններէ՝ մնացրաց ընդօրինակութեանց կից կամ զատ: ՀՐՏՐ:

*ծայուածը, ետքէն Կիւրղին ընծայուածը։ Իրօք ալ առաջինը, Բարսղի անուան հովանւոյն տակ, ընդունելութիւն գտնելով, մանաւանդ Կ. Պոլիս, մեկնողնք գործածութենէ դուրս միահաղոյն մոռցուեցան, ինչպէս միահաղոյն կը գըտնուէին։ Հայաստան, սոր հակառակ, անոնց մէջէն միայն վերջինը՝ որն որ ժամանակաւ մեկնողնցմէ կրտսերագոյն կերպարանք մ՚ունի համառօտութեամբ, տիրող եղաւ ի գործածութեան, նոյն իսկ Ը դարուն վերջերը կամ Թին սկիզբները, մասնաւոր Յառաջադասութիւն մը տալով՝ անշուշտ առաջիններուն սիրուն ամփոփութեան, սուր ճշդութեան* (précision) *համառօտութիւն* (compendium) *մ՚ըլլալուն. անանկ որ մեկնողնք բոլորովին կորսուելու վտանգի մէջ ինկան, եւ հազիւ այսօր այսչափ դժուարութեամբ հետքերը կը ժողվենք։*

*Արդ աս 5 պատարագներուն վաւերական կարգն եթէ ունենայինք, կրնար անկէ ցայսվայր հաւաքման նկատմամբ ըսուածներուն աւելի զօրութիւն մը ցուցնել։ Բայց, աւաղ, Լուգդունեան մատենին սկզբնական կազմողը կ՚ուզէ ժամանակագրական կարգաւ դնել պատարագները, այսինքն իրենց կրած անուններուն համեմատ. ուստի ամենէն կրտսերը՝ այսինքն մեր սովորական պատարագը՝ հիմակուան համեմատաբար աճած ձեւին մէջ ամենէն յառաջ, որովհետեւ, ինչպէս ինքը կը հաւատայ, Աթանասի կը վերաբերի. ետքը ան՝ որն որ Գրիգորի Լուսաւորչի կ՚ընծայուի՝ այսինքն զուտ Բարսղինը, ինչպէս որ Հայք Ը դարուն առաջին տասնեակէն ունէին. ետքը հարկաւ Գրիգորի Աստուածաբանի ընծայուածը. ետքը Սահակայ Հայրապետին վերագրուածը. եւ վերջապէս Կիւրղինը։ Ներքին յատկութիւնները կ՚ուզէին մանաւանդ՝ որ Գրիգորի Աստուածաբանի վերագրուածը վերջինն ըլլար, Աթանասի ըսուածն ալ վերջին տեղը բռնէր, եւ այսպէս բոլորն ի կարգի կ՚ըլլար։ Մենք կը կարծենք թէ ասանկ ալ ի սկզբան դասուած են աս պատարագները՝ զորոնք թող տալով անունները՝ անուանեցինք Բարսղինէն ետքինները՝ պարզապէս թուարկելով Բ, Գ, Դ, Ե պատարագամատոյց կամ պատարագի ձեւ, խմբելով Սահակայ, Կիւրղի, Գր. Աստուածաբանի եւ Աթանասի անուանուածները։*

*Անծանօթ չէ ուրիշ կողմանէ վերոյիշեալ նահանգին մէջ խորհրդական ձեւերու Դ դարուն մէջ կատարուած նորոգութիւնը։ Նշանաւոր է նոյն իսկ սրբոյն Բարսղի՝ աս նկատմամբ խօսքերը, երբ որ Գրիգորի Սքանչելագործի Հաւատոյ դաւանութեան՝ որմէ Սաբելեանց դէմ վկայութիւն կը բերէ, ամենեւին փոփոխութիւն կրած չըլլալը կը հաստատէ։ Ասոր նկատմամբ, նաեւ մինչեւ ցայսօր, կ՚ըսէ Կեսարիոյ արքեպիսկոպոսը, նոյն դաւանին մարդիկը մեծ զարմանքով լեցուն են, անանկ նոր եւ առոյգ յիշողութիւն մը տպաւորուած է ան եկեղեցիներուն որ երբեք ատեն մը չի մարիր։ Ուստի ոչ գործք մը, ոչ խօսք մը, ոչ խորհրդական ձեւ մը անոնց աւանդածէն աւելի, եկեղեցւոյ մէջ չաւելցուցին։*[2] *Անոր համար ալ անոնց կատարած պաշտամանց մէջ շատ բան իբրեւ պակաս կ՚երեւայ կարգադրութեան հնութեան պատճառաւ։ Վասն զի այն եկեղե-*

[1] Գիրք վասն Հոգւոյն սրբոյ, Գլ. ԻԹ. § 74. (տպ. Փարիզ, Հատ. Գ., էջ 62։)

[2] Համեմ. Basilius, de Spiritu sancto, c. XXIX, 74. *Θὐ τύπον τινὰ μυστικὸν παρ' ὃν ἐκείνοις κατέλιπε, τῇ ἐκκλησίᾳ προσέθηκαν· ταύτῃ τοι καὶ πολλὰ τῶν παρ' αὐτοῖς τελουμένων ἐλλειπῶς ἔχειν δοκεῖ, διὰ τὸ τῆς καταστάσεως ἀρχαιότροπον.* Տես վերը էջ 164։

ցեալ առաջնորդութեան յաջորդ եկողները չէին հանդուրժեր՝ իրմէ ետքը հնարուած գտնուած բաներն ընդունելով աւելցնել։[1] Ընդհանուր պաշտամանց ձեւերու, ինչպէս նաեւ արարողութեանց վրայ է խօսքը՝ անտարակոյս. բայց ատոնց մէջ հարկաւ առաջին տեղին ունեցած են պատարագամատուցի ձեւերը։ Ան ամէն բան կ'իմանայ ուրեմն հոս Բարսեղ՝ զորոնք իրեն քահանայութեան ատեն, երբ 350ին, ցուցուցած գործունէութիւնը բացատրելով կ'ընծայէ իրեն՝ իր մտերիմը Գրիգոր Նազիանզու, այսինքն "աղօթից կարգաւորութիւնս եւ բարեզարդութիւնս բեմին" (εὐχῶν διατάξεις καὶ εὐκοσμίας τοῦ βήματος[2]): Հարկաւ աս նորոգութիւնք անմիջապէս ընդունելութիւն չգտան. եւ չէ թէ մինակ Պոնտոսի մէկ գաւառն՝ անշուշտ շատերը դեռ երկայն ատեն չէին ուզեր սովորածներէն բաժնուիլ. եւ այսպէս հինը նորոյն քով, մանաւանդ հասակաւ յառաջացեալներուն մէջ, բաւական ատեն կը բաժնէր աս ընդարձակ նահանգը։ Նոյն մեր շատ անգամ յիշած Նազիանզու եպիսկոպոսը՝ որն որ, ինչպէս կ'երեւայ այնչափ ջերմ էր սոյն նորոգութեանս, պէտք էր իր հայրը առնել որ "Գոհութեան խօսքերը անանկ կ'ըսէր, ինչպէս որ սովորական էր" (ἐπείπων τὰ τῆς εὐχαριστίας ῥήματα, οὕτως συνηθές,) ինչպէս որ ինքը սորված էր, նորոգութեան չհաւանելով՝ ծերունի եպիսկոպոսը։[3]

Կը կրկնենք. թէպէտ մեր աս Ե անուանած պատարագը՝ մինչեւ որ Ե դարէն ետքը գրեթէ մի միայն տիրող եղաւ, առանձին չէր. չէ թէ մինակ իրմէ նախընթաց հնագոյններ կային, հապա նաեւ ուրիշ գոնէ երկու anaphoraներ ալ կային՝ իրեն հետ հաւասար ճոխութեամբ եւ հաւասար համառօտութեամբ զուգձեւալ մի եւ նոյն յոյն աղբիւրէ, եւ՝ եթէ ամէն նշանները չեն սխալեր՝ նաեւ նոյն գաւառներէ եկած։

Թէպէտ ճշդիւ չի կրնար ապացուցուիլ, սակայն շատ յարմարութեամբ կրնայ ենթադրուիլ որ աս երեքը — այս ինքն Աթանասի ըսուածը, ինչպէս նաեւ աս երկուքը՝ որոնցմէ մէկը ըստ կամի Կիւրղի Աղեքսանդրացւոյ եւ մէկալը Գրիգորի Աստուածաբանի ըսուած է, — աս երեքն ալ, կ'ըսեմ, մի եւ նոյն գրչէ թարգմանուած ըլլայ։

Բոլորովին աւելորդ է նշանակելը որ ատոնք Կէ—րղէ եւ Գ—րէգ—րէ անուններն կրող Եգիպտացւոց եւ Ցակոբիկ Ասորւոց պատարագներուն հետ ամենեւին հաղորդութիւն չունին։ Հապա վաւերական պատարագներ են գոնէ Ե դարուն. անանկ որ եթէ մէկը Դ դարուն ընծայէ, դժուարաւ կրնայ անհիմն յանդիմանուիլ։

Աս երկու — Դ եւ Գ — պատարագներուն առաջինը, այսինքն Դ Պատարագը՝ որն որ Կիւրղէ Աղեքսանդրացւոյ վերագրուած է, ընդարձակութեամբ կը հաւասարի վերը յառաջ բերուած Բ պատարագին՝ որուն մէջ Նազիանզացւոյն գրիչը նշմարեցինք։ Աս ալ անոր պէս ան ժամանակներուն հռոմէական վարդապետութեանց հետքերն ունի։ Ոչինչ նշան կրնայ անկէ կրտսերագոյն ժամանակի մը ծնունդ կարծել տալ զանիկայ. հապա ամենայն ինչ հոն նոյն հոգին կը շնչէ, կատարեալ իմաստից կապակցութեամբ թէ՛ յընդհանուր եւ թէ՛ յիւրաքանչիւր մասին։ Եթէ, մէկը հոս ալ Նազիանզու եպիսկոպոսը ուզէ յիշել, չենք կարծեր

---

[1] Հմմտ. անդ՝ τῶν μετ' ἐκεῖνον ἐφευρεθέντων (adinventa) παραδέξασθαι εἰς προσθήκην.

[2] Ճառ. Ի. ի գով. Բարս.։

[3] Ճառ. ԺԸ. ի մահ հօրն, 29։

որ անհիմն մտածած համարուի, մանաւանդ գիտելով հոն նոյն ճշդութիւնն ու իմաստից կապակցութիւնը։

Չի պակսիր բոլորովին սոր ալ՝ արտաքին վկայութիւն՝ իրեն հնութեանը համար։ — Շատ անգամ յիշուած Վարդավառի աղօթքը, (տես վերը, էջ 321) Համազասպայ եւ Սահակայ վաւերական եւ ընտիր վկայաբանութիւնը (տես էջ 323) եւն, բաւական յայտնի գուշակել կու տան թէ դեռ ան ատեն աս պատարագն անշուշտ գործածութեան մէջ էր։ Սակայն շատ աւելի առաջ կը տանի զմեզ, ու սոր աւելի անդին չի կրնար անցնուիլ, այսինքն նոյն Ե դարուն վերջերը կը հանէ զմեզ Յովհաննու Մանդակունւոյ յայտնի գործածութիւնը (տես էջ 325)։ Արդէն հայերէն թարգմանութեան լեզուն իւր բազմապատիկ կապակցութեամբը մեկալ պատարագներուն հետ, չի թողուր զանիկայ անոնցմէ բաժնել եւ ոչ մէկ կերպով։

Հայաստանէն դուրս սոր հետքը կա՞յ։ — Չունինք աս նկատմամբ որոշիչ կէտ մը նշանակելու*։ Սա խօսքերը Կանոնին մէջ "առատապէս հոգաբարձութեամբ նախախնամելով զանազան շնորհօք խրատեալ արդահատեցեր, բարկութեամբ, հարուածովք, ողորմութեամբ," մասնաւոր կէտ մըն է՝ որն որ կը յիշեցնէ նոյն իսկ Նազիանզացին իր Բ պատարագին Կանոնին վրայ ձեւուած խօսքին մէջ (Ճառ ի Զատիկն,) կէտ մը՝ զորն որ ցայս վայր չտեսանք ուրիշ պատարագաց մէջ, այս ինքն "բարկութեամբ եւ հարուածովք" նախախնամութիւն։

Երրորդ, այսինքն Գ պատարագին գալով՝ թէպէտ սոր վաւերականութիւնը, հնութիւնը, յունական ծագումը տարակոյսներէ վեր եւ ազատ է, սակայն արտաքին ապացոյց մ'առ այս ամենայն դեռ չունինք աւելցնելու՝ ոչ հայկական եւ ոչ յունական*։ Ուստի ամենայն ինչ ներքին յատկութեան կը մնայ՝ որն որ անբաւական չէ։ Նոյն լեզու եւ գրիչ է, չի կրնար երկբայուիլ, որ զանիկայ հայերէն կ'ընէ։ Նմանապէս վարդապետական պարունակութիւնն ու բովանդակ կազմութիւնը մէկալ Բ, Դ եւ Ե Պատարագներուն հետ կը կապեն զանիկայ սերտիւ։

Ասիկայ թէպէտ մտադրութեան արժանի պատարագ մըն է իրեն քանի մը մասնաւորութիւններովը — օրինակ իմն՝ Կանոնին գոնէ գլխաւոր մասն ի դէմս Քրիստոսի ուղղուած ըլլալով, — սակայն բովանդակ պատարագը, ինչպէս որ Լուգդունեան միակ Օրինակը մեզի կ'ընծայէ, շատ չարչարուած է։ Երկու տեղ — ան ալ նշանաւոր իմաստ մ'ունենալու տեղեր, — մէկ քանի բառից խառնակութեամբ կամ կրճատութեամբ՝ եղած է բացարձակապէս անիմանալի։ Կամ Լիոնի մատենին գրողը, կամ՝ աւելի հաւանական՝ անոր սկզբնական հաւաքողն ու կարգադրողը, չի գիտցուիր՝ ինչու, մէկ կամ երկու աղօթք անդափոխ ըրած է՝ որոնք բարեբախտութեամբ իրենց ներքին կազմութենէն կամ պարունակածէն յայտնի կ'ըլլեն թէ ուր կը վերաբերին. եւ վերջապէս սոյն պատարագին սեպհական երկու աղօթքներուն (postcommunio եւ εὐχὴ ὀπισθάμβωνος) տեղ՝ նախընթաց կամ ուրիշ պատարագներուն առած զետեղած է հաւաքողը։ Բայց որպէս զի դժբախտութիւնն իր լրումը գտնէ, Լիոնեան Օրինակէն ամբողջ թուղթ մ'ինկած է, թէպէտ բոլոր մատեանն ասկէ զատ ոչ ուրիշ պակասութիւն մ'ունեցած է։ Ապահովապէս 293 բառից թերթ (lacune) մըն է պակսածը՝ Կանոնին յիշելեաց մասէն, բաւական կտոր մը։

* Սակայն կայ "Իգնատիոսի" բով նստուած մը. (տես էջ 263 եւ 330, ծան. 1։) ՀՐՏՐ.

Ա՛ս Պատարագաց, մանաւանդ Ս. Պատարագին Հայոց մէջ գործածութեան գալը՛ գոնէ սոյն թարգմանութեանը զոր ունինք, Ս դարուն կէսէն առաջ չէր կրնար գործածուիլ. վասն զի լեզուն կ՚ենթադրէ այն յեղափոխութիւնը՝ որն որ նոյն դարուն կէսերը սկսաւ։ Թէ Ճառագրքոյն եւ Թէ Տէրականօրէին բաւական գունաւորուած է նոյն միջոցին երեւան ելած նոր հելլէնաբան հայկականով։[1] Սակայն աս գոյնն այնչափ մեղմ է որ դեռ չէ թափանցած այն գեղեցիկ եւ զօրեղ լեզուն՝ որն որ նոյն դարուն առաջին կէսին կը վերաբերի՝ բոլորովին ապականելու. անանկ որ ընդհանրապէս սեղ սեղ տողեր, պարբերութիւններ, քիչ անգամ ամբողջ աղօթք մը խսկ կը գտնենք՝ որ նախընթաց կէսին լեզուէն չեն տարբերիր. եւ ընդհանրապէս ևթէ որոշեալ բառեր եւ քանի մը դարձուածներ սրբագրելու ըլլանք՝ կատարելապէս հին լեզուն առջեւնիս կ՚ունենանք։ Ասիկայ ճիշդ յատուկ (caractéristique) է՝ քանի մը յիշատակարաններով (document) վաւերացած՝ գիրքերուն, որոնք նոյն դարուն կէսէն շատ հեռու գրած կամ թարգմանած չեն։ Ուստի սոյն դարագլխէն վար չի կրնար ձգուիլ առաջնկայ պատարագին թարգմանութիւնը։

Անշուշտ շատ կամայական ու ձրի կ՚ըլլար՝ եթէ մէկը պնդէր թէ օրինակի համար Բ. Պատարագը նոյն ատեն իբրեւ մատենագրութիւն մը, չէ թէ իբրեւ գործածուելու պատարագ մը, թարգմանուած է Հայոցմէ։

Իրաւ է որ դար եւ դարուկէս ետքը մէկմէ զլուած կ՚երեւայ. սակայն բաւական ժամանակ — գոնէ մասնաւորապէս — գործածուելէն ետքը։ Դեռ այն ատենները ուրոյն տեսլեան պատարագ մը չըլլալուն՝ ասանկ պատարագ մը կը թարգմանուէր, որպէս զի գործածուէր։ Հիմակուան մի միայն Հայոց մէջ գործածուած պատարագն է որ կամաց կամաց թէ աս եւ թէ ուրիշ Հայոց մէջ գործածուած պատարագները չգործածութեան բերաւ. եւ այն ատենէն զանոնք մոռցուց որ շատ դարերէ ի վեր եւ ոչ կասկած մը մէկն ունեցած է թէ երբեք ասկէ ուրիշ պատարագ կրնայ գործածուած ըլլալ Հայոց մէջ։ Ի վերայ այսր ամենայնի մինչեւ Ժ դար դեռ սոյն պատարագը բոլորովին անծանօթ չէր։

---

[1] Օրինակի աղագաւ՝ Բառագրքէս հետեւեալ բառակազմութեամբք. «Գործակցնել, բոլորէյ, բնաւէյ, ամենէյ, բոլոր (շատ յաճախ), ընդունակ, առաջնորդող, չքնաղայութիւն, հրամանատրել, պատուէրանատրութիւն, յեղանակ, երկնային, բարեգործութիւն, քաղաքանել, հզօրեղութիւն, աստուածաբանութիւն, ողորմանական, քերթողական, օրէնսդրական, մարդկային, յաւէտ, յաւէժ (սակաւ գործածուած), ամենէն, բարերարել, բոլորագէտ, աստուածային, բովանդակապէս, անեղծապէս, ենթադրել, բարեշնորհութիւն (= գոհութիւն), էական, ամենաբարուհի, տէրուհի (δέσποινα), փառաւորել, զօրաւորել, հարստութիւն (= ընչաւէտութիւն), գոյն, անմահել, անհերքել, անպայման, անտեսանել, անփոփոխել, բարեխօսութիւն, կերպաւորել, բարեխնամութիւն, անեղծ, գումարել (= ժողովել), անպատմելի, քերովբէական» եւն։

Իսկ քերականօրէն հետեւեալ դարձուածներով. «Պատահելոցն մեզ յաւիտենական բարութեանցն.» — «Ցինքն նահանջաբեկել զցասումն օրինադրեցեր.» — «Նզեալ զնա ի դրախտին փափկութեան գործել եւ պահել ասացեր.» — «Անարժան դրախտին երեւեալ վայելչութեան.» — «Հոգեւորական երգովք զքո փառաբանել զաստուածութիւնդ, զոր երկրպագեն հրեշտակք.» — «Ահեալք զառ ի լուսոյն ճառագայթումն հզօրեղութեան քո.» — «Զինքեան այցելեալ նորոգեցէ զատեղծուածս.» — «Առեցելով մարմնովն.» — «Քանզի զգժոխոց խորտակեցեր զըրսնութիւնս.» — «Զճշմարտութիւն ճանաչողացս ենթադրել զոա աներկիւղապէս միջնորդեաց.» — «Զառաջինկայ շնորհեալ զաւուրս խորհուրդ.» — «Առ աշխարհի փրկաւորուին դիմել ի չարչարանան.» — «Ցամենայնի վայելէ բարեշնորհութիւն (= գոհացողութիւն) քումդ առաքել բարերարութեան, որ զի զյանցանաց մերոց ընջելով զձեռագիր.» — «Այլ մատուցանել քեզ ասացեր զբանաւորութիւն» եւն։

*Հին ատեններէ սակաւ՝ բայց բաւական յայտնի նշմարներ աս նկատմամբ տողէն վերը (էջ 320 եւն) նշանակուածներէն կը տեսնուին։*

*Ժ դարէն ետքն ալ ամենեւին հետքն անգամ չենք գտներ Հայոց մատենագրութեան մէջ։ (Մինչեւ որ ԺԳ դարուն, այսինքն Հայոց ուրիշ ազգաց հետ յարաբերութեան մտնելովը եւ յայսմ իրենք զիրենք շատ աղքատ տեսնելով, սոյն պատարագը Թաղուած մագաղաթներէն յարութիւն առած է։)*

*Ասանկ պատարագի մը խափանուելուն եւ այսչափ կանուխ մէկդի դրուելուն եւ մոռցուելուն պատճառը՝ չէ թէ միմիայն նոր պատարագին խմբագրութիւնն եղած է. հապա անշուշտ ուրիշ նիւթքին պատճառ մ՚ալ առ այս մղած է։ Որովք կը տեսնենք որ երկու բան կայ մեր աս պատարագին մէջ՝ որն որ պէտք էր որ սարսափ բերէր Հայոց՝ գէթ ոմանց՝ սկսեալ գոնէ Է դարէն։*

*Յունաց հետ Հայք ալ Է դարուն մեծ կապի մէջ էին. վասն զի ասոնք (Յոյնք) բացարձակապէս կը պահանջէին որ պատարագի բաժակին մէջ ջուր խառնեն, եւ մի եւ նոյն ատեն կը բաղձային որ Հայք փոխանակ բաղարջի խմորեալ հացով պատարագեն։ Որուց աս վիճակին մէջ հարկ էր որ աս գեղեցիկ պատարագը բոլորովին աչքէ ելնար՝ որն որ Քրիստոսի Տեառն մերոյ համար կ՚ըսէ՝ բաժակը նախ խառնեց ջրով. եւ դարձեալ տէրունական աղօթքէն առաջ կը խնդրէ որ սոյն "խմորով" խմորէ զամէնքը։ Թէպէտ աս վերջինն իրական խմոր չէր նշանակեր, եւ բաղարջ հաց ալ Խորհրդոյն գործածուէր՝ նոյն աղօթքն հաւասարապէս իր իմաստն ունէր. սակայն բառը կրնար ընդոստուցանել խմորուն հացին դէմ ոգորող կամ պարսաւալիր Հայերը։ Թէպէտ իրաց ճշմարտութեան նայելով՝ կրնար ըսուիլ աս "ի խմորոյ զգուշանալ" ուղղներուն թէ շատ հաւանական է որ նոյն իսկ աս պատարագը գործածողներուն մէջ եղած ըլլայ սուրբ Խորհրդեան համար բաղարջ հաց գործածելու սովորութիւնը, ուստի Հայոց ալ անցած է իրենց քրիստոնէութեան դարձին ատենը Դ դարուն սկիզբները։*

## 4.

### *Աս պատարագաց Հրատարակիչ-Թարգմանն ու Հեղինակը:*

*Ո՞վ է Հրատարակիչը՝ բայց եթէ Յովհան Մանդակունի, որմէ անդին չկրցանք անցնիլ եւ զորն որ կրնանք լիուամբք մի միայն Թարգմանիչ ալ համարիլ։ Ներքին նշաններէն զատ՝ արտաքին վկայութիւնք ալ առ այս կը լծին։*

*Յովհ. Զ. Հայոց պատմաբան Կաթողիկոսէն՝ մեր ծիսարանին վերստին հաւաքող Մաշթոց Կաթողիկոսի աշակերտէն եւ յաջորդէն 895ին յայսմ բոլորով հաւատով կը լսենք. "Սա (Յովհան Մանդակունի) որ է ի գաւառէն Արշամունեաց, ի գեղջէն ծախնոտայ" եւն։ Ինքը պատմութեան ուրիշ նախորդներուն պէս, հնագունից վրայ դեռ խառնակ եւ շփոթ չի խօսիր եւ ըստ կամի չի ստեղծեր, դեռ քիչ շատ անոնց վրայ մօտաւոր գրաւոր բաներ ունենալով ձեռքը, որով մեզի հոս վստահութեան արժանի է։ Ուստի չի գիտեր Յովհ. դեռ հաստատ գրով մը որ Ն Պատարագն Աթանասի ըլլայ, այլ ընդհակառակն ինքը կարգադրութիւնը Մանդակունւոյ կ՚ընծայէ. վասն զի թէեւ նախընթաց ան պատարագին վրայ դրուածներուն սկիզբը Մանդակունւոյն անունն ան ատեն դրուած ալ չկարդար, սակայն խօսքերուն իմաստներէն՝ անոր ըլլալուն չէր տա-*

*րակուսեր։ Ցայտնի է վերոյիշեալ վկայութիւններէն թէ Ն պատարագը՝ զոր որ տաքէն Աթանասի ըսելու սկսան, ի սկզբան անբաժին մէկմէկէ եղած էր Մանդակունւոյն ձեռքէն։ Բայց մեր պատմաբան Կաթողիկոսը կինայ մեկ ըլլալ նորէն իր «Տարագրութիւն Հայրապետացն Հայոց» վերագրած (դեռ անտպագիր) գրուածոյն մէջ. «Սա (Յովհան Մանդակունի), կ'ըսէ, Նախադիր գտաւ (Նախ կարգադրեց) Հայաստանեայց ժամակարգութեանց սքանչելապէս յարդարեալ քարոզս եւ աղօթամատոյցս եւ երգ(ս) հոգեւորս ի փառս Աստուծոյ, եւ «զՏէր Աստուած զօրութեանց» զպատարագամատոյցն։»*[*]

*Աս պատարագամատուցին Հրատարակիչն ինչո՞ւ Թարգմանիչ ալ չըլլայ թէ առոր եւ թէ բոլոր ան նոր պատարագաց մասերին՝ որն որ մէկ ձեռքէ եղած է։*

*Մեր պատմաբան Կաթողիկոսէն հանգիստ* 100 *տարի ետքը, իբր* 1000 *թուականին, մանաւանդ ԺԱ դարուն սկիզբներն էր որ Ստեփանոս Ասողիկ անոր ոչ անհամաձայն գրելով կ'ըսէ. «Սա (Յովհան Մանդակունի) ի գաւառէն Արշամունեաց, ի գեղջէն Ծախնոտայ՝ գՀայոց բազում կարգս ուղղութեան կատարեաց, զքարոզս գիշերի եւ տուընջեան, զկարգս մկրտութեան, եւ զաւրհնութիւն եւ զքահանայի եւ զեպիսկոպոսի, եւ զօրհնութեան եկեղեցւոյ, եւ գլխովին զպատարագամատոյցն՝ զոր Աթանասի ասեն լինել։»* (*Տես նաեւ վերը՝ էջ* 320։)

*Մեզի — որ արդէն ցայս վայր ներքին հաւանական նշանօք եւ վկայութեամբ իրաց՝ Մանդակունւոյն հասած կեցանք, անկէ ո՛չ առջին եւ ո՛չ անդին մէկը Հրատարակիչ նմանցընելով, — շատ զարմանալի եւ ախորժ են աս կրկին վկայութիւնները — Պատմաբան Կաթողիկոսին եւ Ասողկանն Տարօնացւոյ, — որոնք մինչեւ զՄանդակունին գիտեն եւ կը հաստատեն զինք աս մեր Ն թուարկած պատարագին տուող, առաջինը՝ դեռ Աթանասի վերաբերիլը չգիտնալով, երկրորդը՝ չհաւատալով «ասեն լինել»։ Գիտենք ցայս վայր խօսուածներէն որ Ն պատարագն ըստ ինքեան մէկմէկէ սկզբնաբար անբաժին էր, եւ անոր տուողը վկայեալ առնելով Մանդակունին Յովհան, չէր կինար՝ բայց եթէ բոլորին ալ ըլլալ տուող եւ Թարգման։*

*Սակայն ուստի՞ ան կրկին պատմագրաց աս վաղեմի ծանօթութիւնը։ Նթէ ոչ այլ ուստեք, ստուգիւ նոյն իսկ ինքեան Մանդակունւոյն անուան վերնագիրներէն՝ որոնք ան ատեն դեռ քիչ կատարելագոյն մասերին մէջ կային քան որ հիմայ, ան ալ ըստ մասին, եւ անտարակոյս աս Ն պատարագին սկիզբը կը կարդային ան երկուքն ալ իրեն անունը (ինչպէս Ժամագրոց, Խորհրդոց, Ձեռնադրութեան գրոց, եկեղ. Օրհնութեան, ինչպէս ցայժմ կը նշմարենք, առաւել եւս իրաւամբք Ն պատարագին սկիզբը) ուր Մանդակունի յատուկ յաւելուած ըրած էր, ինչպէս տեսանք* (*էջ* 272, 320 *եւն*)*, աս Աթանասի ըսուած պատարագին։ Արդեօք ան Ասողկան գլխովինը ասանկ սկզբնական գլխոյն ակնարկութի՞ւն մըն է։*

*Ահա ներքին եւ արտաքին վկայութեամբք Մանդակունին Յովհան Ն դարուն վերջին քառորդէն (թուականը ճշդիւ ձեռքերնիս չէ հիմակուան միջոցներով,) մեր աս* 5 *Պատարագաց տուողն եւ Թարգմանն է։*

*Բայց ո՞վ չի տեսներ որ ամենէն աւելի շահաբեր է մեզի ոչ միայն ան գիտնալ թէ որո՛ւն ձեռօք առինք զասոնք, այլ թէ ո՞վ եղած է անոնց Հեղինակը, ուստի եւ երբ Հայք զասոնք ընդունեցան եւ գործածեցին, բայց չհամարեցան*

---

* *Մ. Այրիվանեցւոյ ալ կարեւոր վկայութիւնը տես վերը՝ էջ 327։* ՀՐՏՐ.

*երբեք հայկական, գոնէ ըստ մեծի մասին, այլ յունական։ Մեզի կ'իյնայ հիմայ անդրադոյնն որոնել։*

*Գիտենք ամենայն ստուգութեամբ որ Յովհան Մանդակունի, իր պատանեկութեանը, աշակերտած էր Մեծին Սահակայ¹ — որն որ իր հրահանգն ի Կեսարիա Կապադովկացւոց առած էր, — եւ Գիւտայ Կաթողիկոսի, այնպիսի գիտուն մարդու, եղբօրորդին էր,² որն որ (Գիւտ) իր ուսումը Յունաց քով ըրաւ, եւ միշտ անոնց հետ հաղորդակցութեան մէջ կը գտնուէր։ Ի՞նչ բաներ չէր ժառանգած անկէ՝ իր եղբօրորդին՝ երբ որ աթոռն անցաւ։ Աս ժիր Քահանայապետը զորն որ իր մէկ ժամանակակիցը "հրեշտականման„ կը կոչէ, իրեն գերազանց վարդապետաց գաղափարները լրացընելու կը ձեռնարկէր գլխաւորաբար, ինչպէս տեսանք, ատուածային պաշտամանց կարգն ամէն ճիւղերով կատարեալ ընելու հնոյն վրայ. անոր համար ալ վերջապէս ուզած է պատարագի պաշտօնն աւելի ճոխեցընել։ Աս նկատմամբ, ինչպէս իր նախորդները, իբրեւ դուստր իրենց մօրը՝ Կապադովկիոյ եկեղեցւոյն յարած, պատարագամատուցաց կարգաւորութիւնը յառաջադէմ կ'ընէր աստուածային նախանձով եւ նմանը քիչ գտնուած մաքրութեամբ վարդապետութեան՝ որն որ իր բերնէն կը բխէր։ Աս դրացի երկիրն էր՝ որ ամենէն աւելի աստուածային պաշտամանց կարգերով հռչակաւոր եղած էր. դեռ Կ. Պոլիս, Նոր Հռոմ, չէր բոլոր տիրապետած՝ իր կարգադրութիւնները տիրող ընելով, ուրիշներուն՝ նոյն իսկ Աղեքսանդրիոյ եւ Անտիոքայն՝ խափանելով, տիրապետելով։ Գերազանց էին Մանդակունւոյ համար Կապադովկացի Հայրք, որոնցմէ մէկուն (Բարսղինն) արդէն դարուն սկիզբէն ունեցան Հայք։ Աս անգամ ալ եկեղ. հաղորդութեան եւ ընտանութեան միջոցաւ, — վասն զի Գրոց (նաեւ զմնչեւիցէ եկեղեցական իրաց) ստացումը հրապարակական տուրեւառիկ վաճառմամբ չէր ըլլար, — աս սրբազան պատարագաց գրքերն իրեն ի ծանօթութիւն եւ ի հաղորդութիւն եկած պէտ'որ ըլլան։ Որո՞ւն կամ որպիսւո՞յն։ — Ուրախ սրտիւ կ'ըսենք. ոչ դոյզն մէկուն.* **Գրիգորի Նազիանզացւոյ**, *մեծ վարդապետի եւ մեծ սրբոյ մը։ Ինքն է աս պատարագաց հեղինակը, եւ ոչ այլ ոք. մէկ մասեան ամէնքը միոյ քահանայապետի՝ որն որ Դ դարուն զանազան ժամանակ գրելով՝ իրմէ գործածուած զանազան տեղ՝ անշուշտ իր վախճանէն ետքը հոն ուրիշներէն չէ թէ միայն յարգուած, հապա փոքր ի շատէ ի գործածութիւն առնուած պէտ'որ ըլլայ։ Այսպիսի իրի մը վերջապէս* **Հռոմ** *կ'ըլլայ Հայոց Կաթողիկոսը իր երջանիկ ընտրութեամբը՝ որ կանխենք ըսելու, պատուական է քան զական պատուականս։*

*Այս առաջին անգամ է դարուց հետէ որ կ'արտաբերենք անուն մը նոր եւ անլուր թէ՛ մեզի եւ թէ բոլոր աշխարհի։ Գիտենք որ ունին Եգիպտացիք, ինչպէս պատարագ մը Բարսղի՝ նոյնպէս սրբոյն Գրիգորի անուամբ, բայց ոչ ոք զանի վաւերական կը բռնէ, եւ չենք գտներ հոն հաստատուն կէտ՝ որն որ մեր ցուցածներուն համեմատ գայ։ Առանց Ասորւոց շինած պատարագներուն մէջ մէկ պատարագ մը կայ նոյն Գրիգորի անուամբ (առ Ռընոտոյի), որն որ Գրիգորի վարդապետութիւններէն խմոր մը առնուած շինուած է։ Աս կարգի չեն մերինոնք, հարազատք եւ վաւերական պատարագներ, ճշմարիտ գլուխ գործութիւնք սքան-*

---

¹ Յովհ. Կթղկ. ի Շարադր. Հայրապ. Հայոց։

² Ղ. Փարպ. ի Թղթ. առ Վահան Մամիկոնեան։

չեւոյն Գրիգորի։ Սակայն ոչ Յոյնք ունին այսօր, եւ ոչ հին լատին թարգմանութիւն մը ազատած է զանոնք։ Ուստի ուրիշ բան չէր մնար՝ բայց եթէ ապացոյցներու դիմել՝ որոնք անոնց գոյութիւնն ու վաւերականութիւնը Հայոց քով ի լոյս բերեն։ Աս, կարծենք, յուսահատական չէր, եւ կ'արժէր մտադրութիւն եւ ջանք՝ իրաց կարեւորութեանը նայելով։ (Հմմտ. վերը Բնագրաց ներքեւ զետեղուած ծանօթութիւնները։)

Ինչպէս Բարսղի պատարագամատուցին համար ըսինք, մեր Հայք անշուշտ գիտէին՝ երբ որ առին եւ աւանդեցին յաջորդներուն թէ ո՞յր գրութիւնը կ'առնուն, այլ ասոնք ժամանակաւ տգիտացան. այսպէս ալ պէտք է ենթադրել թէ որոնք որ զանոնք առին Հայոց տալու, գիտէին ճշդիւ՝ որո՛ւն հեղինակութիւնն է, սակայն ժառանգողք ետքէն անգիտացան, եւ՝ ինչպէս տեսանք, վերջապէս անոնց հեղինակներ ստեղծեցին։ Բայց նոյն իսկ աս պատարագներուն գոյութիւնը՝ որ Հայաստանի մէջ, ինչպէս ցուցուեցաւ, անտարակոյս է Ե դարու կէսէն ետքը, կը մօտեցընէ զմեզ ըստ ինքեան սրբոյն Գրիգորի հեղինակութեանը, 100 տարի անջրպետ մնալով, թէ միայն գտնենք այլուստ կէտ մը՝ որ զինքն հարկաւ անոնց հեղինակ մտածել տայ։

Արդ կ'ըսենք թէ աս վերջին ապացոյցը չի պակսիր ամենեւին, որ եւ իցէ խստութեամբ առեալ, եթէ քննողութեան կանոնները յարգ եւ արժէք պիտ'որ ունենան միշտ ընդ ամենայն երկիր։

Աս է մեծ բարեբախտութիւնն որ մեր սքանչելին Գրիգոր քիչ ծանօթ գործքերով մթոյ մէջ մնացած անձնաւորութիւն չէ։

1. Իրեն վարդապետութիւնը, մասնաւոր պատերազմն իր ժամանակին մոլորութեան դէմ.

2. Իրեն վարքը, իրեն պատմութիւնը.

3. Իրեն գրեանքը, բազմազգի նիւթով — Պատմականք, Ճառք, Զափականք, Թուղթք։

Աս երեք կարգէ դիտողութեան բազմաթիւ կէտեր սերտիւ դրկախառն կը դրուեն մեր պատարագները՝ որոնք բոլոր եկեղեցւոյ յարգութիւնը եւ հիացումն ստացած գրուածոց մէջ թաղուած են ծանօթ պատճառով. այսինքն որ նիւթոյն սրբազնութեամբ՝ ըստ որում Գաղտնեաց՝ անտարբեր ամէնուն ձեռքը դեռ չէր տրուեր ան ատեն։

Թէպէտ աս երեքը լիովին բաւական են սեռն մտադրութենէ ետքը կատարեալ ապացուցութիւն յառաջ բերելու որ ան պատարագները սրբոյն Գրիգորի բոլորովին յատուկ ծնունդն են, եւ իբրեւ ջինջ հայելւոյ մը մէջ բոլոր զինք կը նկարեն. բայց որպէս զի ամէն խէթ փարատի ամէն մտքէ, ան ալ բախտ մըն է որ քննախնդիր կասկած մը տեղի չի կրնար ունենալ թէ գուցէ ի Հայոց, Սրբոյն գաղափարին խմորին վրայ, շինուած ըլլայ կամ ըստ մասին կամ ըստ բոլորին. Թէպէտ մենք ոչ զոք կը ճանչնանք սանկ գործոյ մը հասու, վասն զի պէտք էր ուրիշ Գրիգոր մ'ըլլալ եւ ոչ պակաս։

Աս է բախտն որ Յոյնք, թէպէտ յանգէտս ցայսօր, կրնան փոքր ի շատէ վկայել աս պատարագներուն վաւերական գոյութեան. վասն զի իրենց հարքը ստուգիւ զանոնք ճանչցած են, թէպէտ չեն պահած։

*Այսպիսի ցոյցեր բաւականութեամբ կը գտնենք Բիւզանդեան նուիրագործական կարգաւորութեանց մէջ։*

*1. Բիւզանդեան Բարսղին մէջ, ինչպէս նշանակեցինք, ամբողջ աղօթք մ՚աս մեր պատարագներէն առնուած է՝ Բ պատարագէն սրբոյն Գրիգորի։*

*2. Ուրիշ պզտիկ կտոր մը դարձեալ անկէ պատուաստուած է Բարսղի Կանոնին մէջ, ինչպէս հոն նշանակեցինք։*

*3. Դարձեալ երրորդ կտոր մը կը տեսնենք որ Սերգիոս Կ. Պոլսոյ Հայրապ.* τροπάριον *մը առած է սահմանելով որ ըսուի՝ երբ որ Հաղորդութենէն ետքը սուրբ սպասները սարկաւագէն սարկաւագատուն տարուին. աս* τροπάριον*ին մէջ կայ պարբերութիւն մը պատարագներուն մէջ Գ թուով նշանակուած Հաղորդութենէն ետքն ըլլալու աղօթքի մը մէջէն։*

*Ուստի չենք կրնար տարակուսիլ որ աս Պատարագները վաւերական գոյութիւն ունենան։**

* *Տես «Աթանասի» Պատարագին գոյութիւնն ասորի լեզուաւ, ինչպէս նշանակեցինք (էջ 270—271.) երկու աղօթքներ «Իգնատիոսի» Պատարագի յօրինող Ասորւոյն քով (էջ 330 ծան եւ յետոյ ի կարգին.) թերեւս նաեւ «Գրիգորի Աստուածաբանի» անուն կրող նուիրագործութեան ալ գոյութիւնը նոյնպէս ասորերէն (տես քիչ մ՚ետքն «Իգնատիոսի» Պատարագի նախաբան Տեղեկութեանց մէջ։) Յատուկ խուզարկութիւն մը շատ աւելի վկաներ ալ յերեւան պիտի հանէ այս բնագիրներու՝ գլխաւորաբար յունարէն եւ ասորերէն, ինչպէս եւ ո՛չ վայրկեան մը կը տարակուսինք։ Ուրիշ խնդիր է թէ նոր քննութիւնք պիտի հաստատեն Ցրգ. Հեղինակին կարծիքը՝ թէ ասոնց հեղինակ զԳր. նազիանզացի ճանչնալու ենք։ ՀՐՏՐ.*



# Գ.

# ՈՒՐԻՇ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑՔ

## ՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐԷՆ ՄԻՆՉԵՒ ԵՐԵՔՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒՆ ՎԵՐՋԸ*

*Պաշտամանց գրքերու վերակազմութեան նոր դար մ'եղած է, ինչպէս ծանօթ է, Կիլիկեցւոց ժամանակն, մերձաւորապէս ԺԱ—ԺԴ դարերը։ Վկայասէրի անունն իսկ կը ցուցընէ Վկայաբանութեանց հնագոյն Հաւաքման ճոխացումն բազմաթիւ նոր կտորներով, հնագոյն բնագիրներու համառօտ խմբագրութեամբ, շատ բան նոյն ժամանակի բիւզանդականաց համաձայնցընելով ըստ պարունակութեան եւ ձեւին։ Այս ժամանակէն է Մաշտոցի, մանաւանդ Ձեռնադրութեան մատեաններու վերաքննութիւնն եւ մեծ մասամբ բոլորովին նոր խմբագրութիւն աւելի արեւմտեաններու հետեւելով. այնպէս որ հնագոյն ձեւերն այսօր դժուարաւ կրնանք վերակազմել։ Շարակնոց, Ժամագիրք եւս նուազ ազդուած չեն նոյն դարու գրաւոր հոսանքէն, անմիջապէս կամ քիչ մ'ետքը. բաւական է յիշել ասոր համար միայն Շնորհալւոյ անունը։*

*Զարմանք չէ որ այս ժամանակները նոր ճաշակ ունեցան մեր Հայք նաեւ Պատարագամատոյցներու նկատմամբ։ Հին եւ պատկառելի բնագիրներ, որոնք ի բաց առեալ "[illegible]" անուանեալը՝ դարերէ ի վեր մոռցուած էին, կենդանացան նոր օրինակներով. — այսպէս՝ Սոփաքոնեան հաւաքման նախագաղափարը 1289էն. այսպէս՝ Լիոնեան հաւաքումը 1314էն. երկուքն ալ պարտական ենք Կիլիկիոյ մեր անխոնջ Հարց։ Բայց միայն հինները գոհ ըրած չեն մերինները։ Բիւզանդեան ճոխութիւնները հրապոյր մ'ունեցած են. եւ այն յաւելուածք ու նորոգութիւնք հետզհետէ ընդելական եղած են Հայոց ալ։ Խոսրովեան բնագրէն եղած է Լամբրոնեան մը, անկէ՝ այժմու մեր Սովորականը, այս կերպարանափոխութեան մէկ օղակն եղած ըլլալով Բարսղի եւ Ոսկեբերանի անուն կրող նոր նուիրագործութիւնք։*

*Յաջորդ մասին թողլով մեր Սովորականին պէսպէս կերպարանափոխութիւնքն, հոս պիտի ներկայացընենք ուրիշ Պատարագամատոյցներ՝ երեք այլեւայլ ծէսերէ առնուած եւ թարգմանուած։ Բիւզանդականէն՝ Բարսղի, Ոսկեբերանի եւ Գրիգորի Տրամախօսի կամ "Նախասրբելոց" կոչուածները. Ասորականէն՝ Իգնատիոսի եւ Յակոբայ. լատինականէն՝ "Հռոմայեցւոց" կոչուածն, որուն կը կցենք քանի մը քաղուածք Միաբանողաց գործածած բնագիրներէն, թէեւ վերջինքս քիչ մ'աւելի ուշ ժամանակի վերաբերին։*

* Ամբողջ այս մասը, ուստի Ոսկեբերանի, Իգնատիոսի, Նախասրբելոց, Յակոբայ եւն Պատարագաց հրատարակութիւնը մեզմէ է: Մեծ. Հ. Յովսէփա Վ. Գաթըրճեանի ձեռագրին մէջ ասոնց մասին բան մը չգտանք. թէեւ գոնէ ոմանց բովանդակութեան մասին տեղ տեղ ակնարկութիւններ կ'ընէ իւր քննութեանց մէջ, ինչպէս տեսանք: Տես նաեւ էջ 171, ծան.:

*Անշուշտ ասոնց մէկն ալ այն յարգն եւ ներքին արժէքը չունի՝ ինչպէս նախընթացները։ Նոր ժամանակի ձեւեր են՝ երբեմն բաւական պակասաւոր թարգմանութեամբ (տես "Նախասրբելոց" Պատարագը), արդիւնք նոր ժամանակի ոգւոյն եւ ճաշակի։ Բայց զասոնք ալ անտես ընել կարելի չէ՝ գոնէ գործքիս ամբողջութեան համար։ Բաց աստի գոնէ Բարսղինն եւ մանաւանդ Ոսկեբերանինն անհամեմատ մեծ արժէք ունին մեզի համար այն ազդեցութեամբն՝ զոր ունեցած են մեր Սովորականին հետզհետէ զարգանալուն եւ կերպաւորուելուն։ Այս պատճառաւ ասոնց սկիզբը համառօտ Տեղեկութիւններ կցելով շատացանք, եւ նիւթին նկատմամբ՝ թարգմանութիւնները բնագիրներուն հետ համեմատելով միայն, առանց պարունակութեան մասին երկայն ծանօթութիւններով բացատրութիւններ տալու. թէեւ, կը խոստովանինք, գոնէ "Ոսկեբերանի" պատարագին համար կ'արժէր անշուշտ։ Բնագիրները ճիշդ պահած ենք Լիոնեան ձեռագրին համեմատ (— վասն զի յաջորդաց մեծ մասը միայն հոն պահուած է. —) առանց որեւէ փոփոխութիւն մ'ընելու, ինչպէս ինքնին կը հասկցուի։*

## 1.

*"Ոսկեբերանի" Պատարագ:*

---

### Ա.

### ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ ԵՐԵՔ ՊԱՏԱՐԱԳԱՑ ՎՐԱՅ

*Յունարէն լեզուաւ բազմաթիւ Պատարագամատոյցներ կան. բայց ոչ ամէնը յատկապէս յունական կամ՝ ճիշդ խօսելով՝* Բիւզանդեան *ծէսին կը վերաբերի։ Առաքելոց Սահմանադրութեան կամ Կղեմեան, Յակոբայ, Մարկոսի, աղեքսանդրեանքն Բարսղի եւ Գրիգորի եւ ուրիշ Պատարագներ յունարէն լեզուաւ են. սակայն պարունակութեան համեմատ՝ մին ասորական, միւսն եգիպտական եւն ծէսերու կը վերաբերին։ Յատուկ* Բիւզանդեան *ծէսի ներկայացուցիչն են* Բարսղի, Ոսկեբերանի *եւ* Գրիգորի Տրամախօսի *անուանուած Խորհրդատետրները, դուրս հանելով բուն* Բարսղինը *(վերը՝ էջ 120 եւն)՝ որ Նազիանզեան վերոյիշեալ չորս Պատարագներուն հետ* հնագոյն յունական *ծէսին կը վերաբերի՝ Պոնտոսի եկեղեցւոյ յատկապէս, եւ ոչ բիւզանդեան ժամանակի։ Բիւզանդեանց կարգին մէջ յիշելու է Պատարագ* Ս. Պետրոսի, *որ խառնուրդ է բիւզանդականէն եւ հռոմէականէն[1]։ Գլխաւորաբար յիշեալ երեք Պատարագներն են՝ որ բիւզանդեան ծէսին տիեզերականելովն՝ աշխարհիս ամէն կողմը տարածուեցան եւ թարգմանուեցան բազմաթիւ լեզուներով, տիրողը մնալով,*

[1] Նախ հրատարակուած Guil. Linden գիտնականէն՝ Apologia pro Liturgia Petri apostoli et commentarius in eandem cum Missa apostolica Petri apostoli, Անտուերպէն 1589, Պարիս 1595, նոյնը՝ յունարէն եւ լատիներէն Ֆաբրիկիոսի քով (Fabricius, Cod. apocr. Nov. Test. Vol. III, Համպուրկ 1719. նոյնպէս ի Bibliotheca Patrum, Պարիս 1624, Հատ. Բ.) Յետերս՝ Վատիկանեան ձեռագրէն եւ համեմատութեամբ Պարիսի ձեռագրին՝ Swainson, The greek Liturgies. Cambridge 1884, p. 191—203. — Ասորականաց մէջ Պետրոսի առաքելոյ անուամբ կրկին Պատարագ հրատարակեց լատիներէն թարգմանութեամբ Ռընոտոյ (Renaudot, Lit. Or. Coll. II, 145—154 Liturgia S. Petri principis Apostolorum, եւ p. 155—162 Liturgia Petri, II.)

ինչպէս բնական էր, երկար ժամանակ յունարէն լեզուն, որով կը գործածուէին այսօր ալ Յունաց քով Արեւելք, եւ Իտալիոյ եւ Սիկիլիոյ յունածէս մասին մէջ։ Յունարէն կը գործածուէին ասոնք երբեմն Մելքիտներէն. բայց երկար ժամանակէ ի վեր՝ ինչպէս սովորական խօսակցութեան՝ նոյնպէս նուիրագործութեան մէջ տեղի տուած է ասորերէնն արաբերէնի Ասորիքի եւ Պաղեստինի Մելքիտներու քով։ Նոյն ճիւղին կը վերաբերէր վրացերէնը, որ այժմ սլաւականէն յետս կը մղուի։ Ամենամեծ տարածութիւնն առաւ այս ծէսը հին սլաւոնական լեզուաւ, որ եկեղեցական լեզու է գրեթէ բոլոր Սլաւաց Ռուսաստանի, Պալքանի եւ Աւստրիոյ. միայն Ռումանացիք ԺԷ դարէն ի վեր թողլով հին սլաւերէնը՝ ռումաներէն սկսան գործածել։ Գլխաւորաբար Ռուսիոյ ճոխութեամբ մինչեւ Չինացւոց եւ Ճարոնցւոց լեզուաւ կը գործածուին այս երեք Պատարագներ, թող բազմաթիւ փոքր լեզուներն՝ ինչպէս լիթուաներէն, ֆիններէն, եւն եւն։ Այս ամենուն պէտք է կցել հայերէնը, որ սակայն տիրող չեղաւ Հայոց մէջ, թէեւ կրցաւ մեծ ազդեցութիւն ունենալ Հայկականին վրայ։

Հոս պէտք էր նախ դնել Բարսղի բիւզանդեան Պատարագը։ Սակայն մեզ աւելի պատշաճ երեւցաւ նոր (բիւզանդեան) բնագիրը կցել հնոյն կամ բուն Բարսղի. ուստի նաեւ բիւզանդեան Բարսղի հայերէն թարգմանութիւնը տեսանք վերը՝ մանրամասն համեմատութեամբ։[1] Նախասրբելոց Պատարագն շատ խեղճ հայերէն թարգմանութեամբ ծանօթ է մեզի, այնպէս որ պահ մը վարանեցանք առնելու հրատարակութեանս մէջ. (տես Գլ. 3 այս մասին։) Հոս կը մնայ "Ոսկեբերանի" Պատարագի հայերէն թարգմանութիւնը տեսնել։

"Ոսկեբերան" եւ "Բարսեղ" (Նոր Թարգմանութեամբ) անբաժին են իրարմէ։ Չէ թէ միայն ընդհանուր ծրագիրը նոյն է երկուքին մէջ, հապա նաեւ բուն պարունակութեան մեծ մասը՝ միայն եղանակաւորած, այլեւայլ յատուկ մասերով միայն իրարմէ չեղելով։ Անոր համար Բարսղի նոր թարգմանութեան վրայ խօսած ատեն՝ չմոռցանք նաեւ Ոսկեբերանինը. (տես էջ 171 եւն։) Յաջորդ դիտողութիւնքն լրացումն եւ յաւելուած պէտք է նկատել այնտեղ ըսուածներուն։

Բիւզանդեան ծիսի անբաւ տարածութիւնն այլեւայլ լեզուներով իւրն հետ կը բերէ որ յիշեալ երեք Պատարագները շատ յաճախ տպուած են, եւ աւելի յաճախ կը հանդիպին ամէն ձեռագրաց հաւաքմանց մէջ։[2] Նախնական տպագրութիւնն (editio princeps) Բարսղի, Ոսկեբերանի եւ Նախասրբելոց Պատարագաց եղած է Հռոմ 1526ի հրատարակութեամբ Դեմետրիոս Դուկայի՝ գործակցութեամբ Կիպրոսի եւ Հռոդոսի արքեպիսկոպոսաց եւ հրամանաւ Կղեմայ Է, կից ունենալով "Գերմանոսի արքեպ. Կ. Պոլսոյ" "Եկեղեցական Պատմութիւնը"։[3] Ոսկեբերանի Պատարագը միայն լոյս տեսաւ "ըստ հրատարակու-

[1] Տես էջ 171—179 եւ բնագիրը՝ էջ 180—216։

[2] Ձեռագիրք մի առ մի կը յիշուին, տպագրութիւնք եւ ուրիշ բազմաթիւ տեղեկութիւնք բիւզանդեան ծէսին վրայ՝ F. E. Brightmanի գեղեցիկ գործքին մէջ, Liturgies Eastern and Western etc. Oxford 1896, p. LXXXI—XCVI.

[3] Համմ. Αἱ θεῖαι λειτουργίαι τοῦ ἁγίου Ἰωάννου τοῦ Χρυσοστόμου, Βασιλείου τοῦ μεγάλου καὶ ἡ τῶν Προηγιασμένων· Γερμάνου ἀρχιεπισκόπου Κωνσταντινουπόλεως ἱστορία ἐκκλησιαστικὴ καὶ μυστικὴ θεωρία. Ἐν Ῥώμῃ χιλιοστῷ φκς' κτλ. Կրկին տպուած նորերս առ Swainson, p. 101—87՝ էջերուն ներքեւ։ — Բարսղի Պատարագի հրատարակութեանց գլխաւորները տես վերը՝ էջ 172, ծան. 1։

թեան Դեմ. Դուկայի, Վենետիկ 1644ին. յունարէն եւ լատիներէն՝ Վենետիկ 1528 եւ 1687. Բարսղի, Ոսկեբերանի եւ Յակոբայ Պատարագները Պարիս 1560, եւ այլուր յաճախ: Ամէնէն նշանաւոր հրատարակութիւնը կը մնայ Goarի գործը, որ նաեւ ութ իրարմէ բոլորովին տարբեր ձեռագիրներու ընթերցուածները կը դնէ ընթերցողին առջեւ, ընդարձակ ծանօթութիւններ նիւթոյն նկատմամբ:[1] Ոչ լիակատար ընթերցուածոց տարբերութեամբք, բայց նոյնպէս ճոխ ծանօթութիւններով հրատարակեց նաեւ A. Daniel իւր յաճախ յիշուած գործքին մէջ:[2] Այս երկու գործքերը գործածած ենք մենք ալ մեր յաջորդ համեմատութեանց մէջ, ուր ինչպէս կը յուսանք, կարեւորներէն բան մը չի պակսիր, թէեւ կը ցաւինք որ չունէինք առջեւնիս Swainsonի գործքը,[3] որ երեք Պատարագներուս ալ պէսպէս խմբագրութիւնները հաղորդած է, եւ մանաւանդ Brightmanի գեղեցիկ գրութիւնն,[4] որ նոր ինկաւ ձեռքերնիս՝ 1896ի լոյս տեսած: Աւելորդ է ըսել որ Յունաց «Աղօթամատուցին» (Εὐχολόγιον) անթիւ տպագրութիւնք եղած են, որուն մէջ սկիզբը կան միշտ յիշեալ երեք Պատարագները:[5] Սակաւաթիւ չեն վերջապէս Յունաց Ս. Հարց գրութեանց եւ յատկապէս այս Պատարագաց[6] հրատարակութիւնք, թարգմանութիւնք՝ հին եւ նոր, քննութիւնք եւն.,[7] զորոնք մի առ մի նշանակել անհնար եւ աւելորդ ալ է:

---

[1] Goar *Εὐχολόγιον* sive Rituale Graecorum etc. Parisiis 1647, 1°, p. 58—86, Variae lectiones (որոնց մէջ Բարսեղինեանն էջ 104 եւն) p. 87—107, Notae p. 108—157. յետոյ՝ Բարսղինը, եւ էջ 187—211 «Նախասրբելոց», նոյնպէս ծանօթութեամբք եւն: Նոյն գործքն երկրորդ տպագրութեամբ՝ Վենետիկ 1730:

[2] A. Daniel, Codex liturgicus, Vol. IV Lips. 1853, p. 327—372, Adnotationes p. 373—420, անկէ ետքը Բարսղինը. իսկ p. 439—450 Liturgia Praesanctificatorum կամ «Նախասրբելոց»:

[3] C. A. Swainson, The Greek Liturgies chiefly from original sources. Cambridge 1884, երեքն ալ՝ p. 76—187, յատկապէս Բարսեղինեան ձեռագրէն (p. 76—98, բնագիր Ոսկեբերանի՝ տես 88—94, 99—148) համեմատութեամբ ուրիշ ձեռագրաց, այսպէս Ոսկեբերանի Պատարագը համեմատութեամբ Cod. Vat. Graec. Nr. 1970 եւ (p. 101—144, 151—187) ԺԱ. դարու Burdett-Coutts III, 42 ձեռագրէն, յետոյ նախնական տպագրութեան համեմատ, եւն:

[4] F. E. Brightman, Liturgies etc. Oxford. 1896, Pars IV, p. 307—411 The Byzantine Rite. յատկապէս Ոսկեբերանինը (p. 353—399) եւ Բարսղինը (p. 400—411) ըստ արդի բնագրին, երկուքն ալ ըստ հրատարակութեան *Εὐχολόγιον τὸ μέγα*, Վենետիկ 1869, p. 34—74, եւ 80—97 եւ ըստ *'Ακολουθία* etc. Աթէնք, 1890, էջ 27—32, եւն: Բարսեղինեան օրինակէն է «Նախասրբելոց» Պատարագը՝ p. 345—352, ուստի Թ. դարու սովորութեան համեմատ: Տես նաեւ քիչ մ'ետքը:

[5] Համմտ. ի մասնաւորի Ոսկեբերանի Պատարագը Migne, Ser. Gr. LXIII, p. 901—922. Բարսղինը XXXI, p. 1629 եւն: Նոյն պատարագները հրատարակեցին նաեւ Neale ի գիրս Tetralogia liturgica (Ոսկեբերանինն ըստ տպագրութեանց Վենետկոյ 1840, 1842). — J. N. W. B. Robertson, ի գիրս *αἱ θεῖαι λειτουργίαι*, Lond. 1894՝ (ըստ տպագրութեանց Վենետկոյ 1851, 1888 Կ. Պ. 1858.) եւ Ոսկեբերանի եւ Բարսղի գործոց բազմաթիւ հրատարակութեանց մէջ. այսպէս Montfaucon, Opera S. Chrysost. Vol. XII Paris 1735, եւ նմաններ:

[6] Համմտ. ի միջի այլոց եւ բաց ի վերոյիշեալներէն՝ *Εὐχολόγιον τὸ μένα* (Մեծ Աղօթամատոյց) Romae 1873, p. 42—80 (Ոսկեբերանի), 81—111 (Բարսղի), 115—128 (Նախասրբելոց:) Աղօթամատոյցք շատ յաճախ տպուած են, մանաւանդ ի Վենետիկ մինչեւ մեր օրերն իսկ, այսպէս 1526, 1545, 1558 եւն, անդ՝ 1803, 1840, 1842, 1888 եւն. Աթէնք՝ 1835 եւն. Հռոմ 1601, 1683, 1754, եւն եւն:

[7] Հին արեւմտեան (լատիներէն) թարգմանութիւնք բազմաթիւ են. գլխաւորքն են Լեւոն Թուսկուսինը 1180ին (տպ. Liturgiae sive Missae SS. Patrum, Պարիս 1560, եւն), Երազմոսինը 1510ին (տպ. Opera Chrysost. Paris 1536, Vol. V, եւ այլուր շատ յաճախ), Ամբրոսիոս Պելարգոսինը (հրտ. ի Վորմս 1541), եւն եւն: Բարսղինը եւ Ոսկեբերանինը հին գերմ. թարգմանու-

*Երեք Պատարագներուս ալ այժմու ձեւն՝ այնպէս ինչպէս յունական եկեղեցւոյ մէջ ցայսօր կը գործածուին, հաստատուն եւ որոշ է. բայց հնագոյն ձեռագիրք՝ ինչպէս հին այլեւայլ տպագրութիւնք, յանչափս կը շեղին իրարմէ.* Goar *այս ամէն տարբերութիւնքը մէկտեղ դասաւորել եւ համեմատել զանց ըրած է (եւ իւրաքանչիւր ձեռագիր յաճախ զատ զատ յիշած)՝ ընթերցողը չշփոթելու համար: Ամէնէն նշանաւորն է այս մասին Բարբերինեան գլխագիր կամ երկաթագիր օրինակը Ը—Թ դարէն, որուն այս երեք Պատարագաց հնագոյն ձեւերը հրատարակած է այժմ նաեւ* Brightman:¹ *Մենք ալ մեր համեմատութեանց մէջ՝ յատկապէս մտադիր եղանք այս ձեռագրին. Թէեւ "Ոսկեբերանի" Պատարագիս մէջ Հայն այնպէս սերտ կապ չունի Բարբերինեան հետ. գոնէ ոչ այնչափ որչափ ունէր Բարսղինը՝ մանաւանդ հնագոյն թարգմանութիւնը կամ "Գր. Լուսաւորչի" աւանդութեամբ ընծայուածը:*

*Ուրիշ բազմաթիւ լեզուներով եղած Պատարագամատոյցներն ալ շատ անգամ լոյս տեսած ու թարգմանուած ալ են, ի մասնաւորի Սլաւականն (Վենետիկ* 1519, 1527, 1554, 1574 *եւն. Մոսկուա* 1602, *եւն եւն:) Ընտիր գերմաներէն թարգմանութիւն մ'ալ ըրաւ Մալցեւ քանի մը տարի յառաջ, հրա-*

---

թիւն մ'ունեցած են 1540ին G. Witzelի ձեռօք. նոր՝ գերմ. թարգմանութիւնք լոյս տեսան այլեւայլ գիտնականներէ, այսպէս (յիշեալ երեք Պատարագներն ալ)՝ Rajewsky, Euchologion der orthodox-katholischen Kirche, Wien 1861—2. — R. Storf, Griechische Liturgien. (Kempten, Bibliothek der Kirchenväter) 1877, p. 117—201. C. Cracau, Die Liturgie des hl. Chrysostomus. Gütersloh 1890 (Թրգմ. եւ մեկնաբանութիւն.) Probst, Liturgie des vierten Jahrhunderts եւն, Münster 1893, 8º, (Ոսկեբերանինը՝ p. 415—444.) Հմմտ. Probstի ուրիշ մէկ գրութիւնը՝ Die antiochenische Messe nach den Schriften des hl. Joh. Chrysostomus, ի թերթին Zeitschrift für die kathol. Theologie, VII, 1888, p. 250—303, եւ անթիւ նմաններ. այսպէս H. C. E. Hamond, the ancient liturgy of Antioch and other liturgical fragments, Oxf. 1879, p. 5—21. Անգղիականներէն յիշելու է Nealeի մեծագործ երկասիրութիւնը, բաց ի Tetralogia գրութենէն, սա խորագրով A history of the holy Eastern Church. I. Introduction, Lond. 1850, p. 341—726 (երեք պատարագներն ալ.) Նոյնպէս երեքն՝ Robertsonի վերը յիշուած գործքին մէջ (անգղ. խորագիր՝ the divine liturgies, Lond. 1894) եւ Brett, Collection etc., p. 42—56 (Ոսկեբերան), 57—70 (Բարսեղ) եւն եւն: — Յատկապէս "Նախասրբելոցն" 1526ի տպագրութեան համեմատ լատիներէնի թարգմանած էր Gilbert Genebrard (տպ. Bibliotheca Patrum, Կոլոնիա 1622, Հատ. ԺԵ. Պարիս 1624, Հատ. Բ. անդ՝ 1644 եւ 1654, Հատ. ԺԲ. Լուգտոն՝ 1677, Հատ. ԻԷ:) Գերմաներէն եւ անգղիերէն Նէալի, Ռոբերտսընի եւ Ռայեւսկիի վերյիշեալ գործոց մէջ: — Հմմտ. Brightman p. LXXXVIff.

¹ Brightman, p. 309—344 Բարսղինն եւ Ոսկեբերանինը միասին դիմացէ դիմաց: Նոյն գիտնականէն կ'իմանանք որ Բարբերինեան Օրինակը տպուած էր արդէն նաեւ Բունսէնի (Bunsen, Analecta antenicaena, Vol. III, p. 201—236), ինչպէս նաեւ Սուէնսընի քով (Swainson, ib., p. 76—98), նոյն ձեռագրին Ձեռնադրութեան մասերը՝ Morinus, de sacris ecclesiae Ordinationibus, Antwerpiae 1695. — Դժբախտաբար երբ բուն Բարսղի Պատարագին դիմաց յունարէն բնագրին համեմատութիւնքը կը գրէինք բաց ի Goarի նշանակածներէն եւ Հ. Յովսէփայ Վ. Գաթրճեան կապարագիր եւ յաճախ դժուարընթեռնլի համեմատութիւններէն՝ յիշեալ գործքերէն եւ ոչ մէկը ձեռքերնիս ունէինք: Շատ բան կրնար աւելի պարզ եւ աւելի ապահով կերպով նշանակուիլ. բաց աստի միայն Բարբերինեան յունարէնը պէտք էր դնել հայերէնին դիմաց եւ անոր հետ համեմատել հայերէնը գըլխաւորաբար: Վերջինս եղած է արդէն Հ. Յովսէփայ հայերէն բնագրին կցած ծանօթութեանց մէջ: Բարբերինեանին մէջ Բարսղէն քանի մը թուղթ ինկած թերատ մը կայ. այս մասը լրացուցած է Brightman Թ—Ժ դարու ձեռագրէն Grottaferrata, Γ. β, VII. — P. Batiffolի ձեռօք ծանօթացաւ Պատարագամատուցի ծիրանեայ ձեռագիր մը արծաթագիր՝ ԺԲ դարէն („Les manuscrits grecs de Bérat d'Albanie et le Codex purpureus Φ", Paris 1886, p. 14).

տպագրելով միանգամայն սլաւերէնը։[1] Արեւելեաններէն հին ասորերէնը տակաւին լոյս տեսած չէ. իսկ Ռընոտոյի թարգմանած երկու Պատարագներն "Ոսկեբերանի" անուամբ եւ ոչ գիծ մը նոյն ունին բիւզանդեան բնագրին հետ։[2] Նոյնպէս է եթովպական լեզուաւ Պատարագը, զոր հրատարակեց Տիլման իւր "Եթովպական Հատընտրին" մէջ՝ իբրեւ "Աղօթք գոհութեան Ս. Յովհաննու Ոսկեբերանի.", որ լիակատար Պատարագամատոյց մըն է, բայց մէկ ծայրէն մինչեւ միւսը բոլորովին աննման բիւզանդականին։ Այս եթովպականը գերմաներէնի ալ թարգմանուեցաւ[3]։ Ընդհակառակ նոյն է արդի բիւզանդականաց հետ Մելքիտեներու Պատարագը, որ շատ անգամ տպուած է յունարէն եւ արաբերէն սա խորագրով كتاب ليتورجيات (Հռոմ 1839, Վիեննա 1862 եւն) կամ كتاب خدمة الاسرار المقدسة (Երուսաղէմ 1860, միայն արաբերէն), երեք Պատարագներն ալ լիակատար ունենալով,[4] պէտք եղած հրահանգներովն եւն։ Վրացերէն եւ ուրիշ լեզուներով եղածներն ալ լոյս տեսած են, մինչեւ չինարէնը 1894ի եւ ճապոներէնն արդէն երկրորդ տպագրութեամբ 1895ի։ — Հայերէն պատարագներէն եւ ոչ մէկը լոյս տեսած է ճիշդ այս բիւզանդեան ձեւով՝ ինչպէս դրինք վերը Բարսղինը եւ յաջորդիւս կը դնենք Ոսկեբերանինն ու Նախասրբելոցն։ Լամբրոնեան Պատարագը՝ որ շատ բան առած է ասկէ, լոյս տեսած էր, նոյնպէս յաճախ Սովորականը. սակայն ասոնք յատկապէս բիւզանդեան ոչ Բարսղի եւ ոչ Ոսկեբերանի նուիրագործութեանց թարգմանութիւն են, ինչպէս յաճախ ըսուեցաւ եւ ինչպէս կը տեսնենք յետոյ ի կարգին։ Ըստ այսմ բոլորովին ուղիղ չէ՝ հայկականքը բիւզանդեան ծէսին մէկ՝ թէեւ շատ տարբերած՝ ճիւղը համարիլ.[5] բայց հին յունականին՝ ամէն իրաւամբ։

Աւելորդ կը համարինք հոս խնդիր յարուցանել թէ ստուգիւ "Ոսկեբերանի՞" գրչէն է այս Պատարագը։ Բարսղի ինքնագոյն ձեւին մասին նոր եւ անհամեմատ արժէքով վկայ մ՚ունեցանք հին հայերէն թարգմանութեամբ։ "Ոսկեբերանի" համար կը պակսի այս կռուանը. վասն զի՝ ինչպէս Բարսղի Նոր թարգմանութիւնը, նոյնպէս "Ոսկեբերանի" հայերէնս ուշ ժամանակի թարգմանութիւն է։ Արդէն նաեւ յունարէնը հին չէ. ամենահին ձեւը կը ներկայացընէ Բարբերինեանն՝ Թ դարու Բիւզանդեան ծէսի ներկայացուցիչն ըլլալով. իսկ միւս ձեռագիրք աւելի ուշ ժամանակի Պատարագը մեր առջեւ կը դնեն։ Խօսե-

---

[1] A. Maltzew, die göttlichen Liturgien unserer Väter Chrysostomus, Basilius d. Gr., und Gregorios Dialogos. Berlin 1890. Համմ. King, Rites and ceremonies of the greek church in Russia. Lond. 1772, Ոսկեբերանինը՝ p. 137—184, եւն։

[2] Տես Renaudot, Liturg. Or. Coll. II, 242—252 Liturgia S. Joannis Chrysostomi. Երկրորդն՝ որ Քաղդէացւոց Պատարագամատուցին մէջ կը գտնուի (Renaud., II, 255—259) շատ կարճ կտոր մըն է։

[3] Համմ. A. Dillmann, Oratio eucharistica S. Joannis Chrysostomi, ի գիրս Chrestomathia aethiopica. Lips. 1866, p. 51—56. գերմ. թրգմ. A. Schulte, Die in Aethiopien gebräuchliche Liturgie des hl. Chrysostomus, ի թերթին „Der Katholik", 1888, I, 417—425.

[4] Օրինակի համար Հռոմի 1839ի տպագրութեան մէջ՝ էջ 109—169 الليتورجيا الالهية التى لابينا ...يوحنا فم الذهب կամ Ոսկեբերանինը. — էջ 170—227 الليتورجيا الالهية لابينا القديس باسيليوس կամ Բարսղինը, եւ վերջապէս "Նախասրբելոցն", էջ 248—279 الليتورجيا الالهية لبروجيازمانا (λειτουργία τῶν Προηγιασμένων).

[5] Օրինակի համար Brightman, p. XCVI—CI Տեղեկութիւնք, եւ Պատարագն անգղիերէն թարգմանութեամբ՝ էջ 412—457. թէ Տեղեկութիւնքն եւ թէ Պատարագը Բիւզանդական ծէսի բաժնին ծայրը։

ցանք վերը (էջ 172—175) Բարսղի Պատարագի հին յիշատակութեանց վրայ եւ յառաջ բերինք Պրոկղի, Պետրոսի Սարկաւագի, Ամփիղոքիոսի եւ Տրուղեան ժողովոյ կոչմունքն, որոնց վրայ աւելցընելու ենք Ղեւոնդիոսի Բիւզանդացւոյ (յամի 531) յիշատակութիւնն ալ։[1] Իսկ Ոսկեբերանի անունն ասոնց քովն ալ չի յիշուիր, բայց միայն Պրոկղի նոյն տեղ յառաջ բերուած կտորին մէջ, որ՝ եթէ ստուգիւ Պրոկղի է, մեծ վկայութիւն մը կ'ըլլայ Ե դարէն իսկ։ Ճիշդ նոյնը կը պատմէ ուրիշ գրութիւն մ'ալ՝ որ Յովհաննու Պահեցողի կը տրուի († 595),[2] որով Ոսկեբերանի անունը գոնէ կերպով մը կապուած կ'ըլլայ Պատարագիս հետ։ Սակայն գիտնականք ոչ միայն Յովհաննու Պահեցողի, այլ նաեւ Պրոկղի անուն կրող յիշեալ գործքերն անվաւերական եւ գրութեան ժամանակն անորոշ կը համարին։[3] Ընդհանրապէս — Ոսկեբերան Պատարագիս նախնական ձեւին հետ կապ ունենայ կամ ոչ — առանց որեւէ երկբայութեան է թէ Ոսկեբերան ամենեւին գործ չունի այժմու բնագրին հետ, եւ ոչ Բարբերինեան օրինակի հնագոյն ձեւին հետ, որ — նշանակելի կէտ մ'ալ աս է, — ունի Բարսղի անունն անոր Պատարագին գլուխը, իսկ "Ոսկեբերանի„ անունը չունի (թէեւ մէկը քանի մ'աղօթքներ անոր անուամբ), վասն զի անխորագիր եւ անանուն կը սկսի հոն Պատարագը։ Ասկէ կը հետեւցընէ Սուէնսըն (Յաջք., էջ 31) որ Ոսկեբերանի անունն եւ ոչ Թ դարուն կցուած էր այս Պատարագի սկիզբը. կարծիքն մ'որ թերեւս այնպէս ապահով չըլլայ։

Յունաց բազմաթիւ մատենագիրներէն, ի մասնաւորի Պատարագաց Մեկնութիւններէն եւ այլեւայլ հնութեանց ձեռագիրներու համեմատութենէն կարելի է մինչեւ անգամ այս երեք Պատարագաց, եւ ի մասնաւորի Ոսկեբերանի Պատարագին, հետզհետէ զարգանալը ցուցընել։ Փորձ մ'ըրած է այս նկատմամբ Brightman իւր յիշեալ գործքին բազմաթիւ Յաւելուածներուն մէջ՝ ծրագրելով Փոքուն Ասիոյ Պատարագը Ղաւոդիկեայ ժողովոյն Կանոններէն (Appendix M, p. 518—21), Պոնտոսի Պատարագը Գրիգորի Նազիանզացւոյ,

---

[1] Leontius, contra Eutych. et Nestor. III, 19 (Migne, Ser. Gr. LXXXVI, p. 1368.) Պետրոսի Սարկաւագի խօսքն ալ տես Migne, Ser. Lat LXII, 90.

[2] Պրոկղի խօսքը տես Migne, Ser. Gr. LXV, p. 849. Յովհաննու Պահեցողինը՝ Cod. Paris. Graec, Nr. 2500, fol. 207v. Ասոր de sacra Liturgia գրութիւնը մասամբ լոյս տեսած ի գիրս Card. Pitra, Spicil. Solesm., Paris. 1858, IV. p. 440—42.

[3] Այսպէս Brightman, p. LIII եւ XCIII. — Probst (p. 413—415) ընդհակառակն Պատարագիս էական մասերուն կազմակերպութիւնը չի դանդաղիր Ոսկեբերանի ընծայելու, ի հարկէ ոչ ամէնն՝ որ կայ այժմու բնագրին մէջ։ Մանաւանդ թէ ուղիղ ընդունելով Պրոկղի աւանդածը՝ կը հետեւցընէ որ Ոսկեբերանի Պատարագը պէտք է որ աւելի համառօտ ըլլար քան Բարսղինն. ուստի ամէն աւելի մասերը յետնագոյն ժամանակի համարելու է, օրինակի համար Նախերգանքին սկիզբն եղած շատ մ'աղօթքները։ Եւ վերջապէս կը յայտարարէ թէ Պատարագիս մեծագոյն մասը ամէնէն կանուխ Ե դարուն կը վերաբերի, ուստի վարանած էր առնուլ զայն իւր գրքին մէջ։ — Ռընոտոյ (Lit. Or. Col., Vol. I, Dissertatio, p. XXXII) Ոսկեբերանի անունն աւելի վստահութեամբ կ'անուանէր այն տեսակէտով որ այս Պատարագին նախնականը Դ դարուն պէտք էր գրուած ձեւ մ'առած ըլլալ. վասն զի Նեստորականք՝ որ Կ. Պոլսոյ ծէսն ունէին եւ զայն յետոյ բոլոր Արեւելք տարածեցին, Պատարագամատոյցն այնպիսի ձեւով մ'ունին որ շատ նման է բիւզանդականին, օրինակի համար Կոչման բանաձեւին սա խօսքը՝ μεταβαλὼν τῷ πνεύματί σου ἁγίῳ ("փոխարկելով Հոգւովդ քով սրբով„) որ ուրիշ յունական, ասորի եւն պատարագաց մէջ չի գտնուիր։ Նեստորականք եկեղեցիէն չբաժնուած՝ Դ դարուն պէտք է որ առած ըլլային այն Պատարագը։ Ասկէ ի հարկէ Պատարագիս արդի ծանօթ ձեւերուն համար բան մը չի հետեւիր։

*Նիւսացւոյ, Բարսղի եւ այլոց գրութիւններէն* (App. N, p. 521—26): *Հեղինակին մանրակրիտ ժողոված կոչմունք չյուսացուած հաստատութիւն մը կ'առնուին՝ եթէ ծանօթ ըլլային իրեն Նազիանզեան մեր չորս Պատարագները, որոնց Սահակայ, Կիւրղի, Գրիգորի եւ Աթանասի անուամբ գոյութիւնն ծանօթ է իրեն Լեւոնեան ձեռագրէն, բայց պարունակութիւնը հարկաւ ոչ: Նոյն իսկ Ոսկեբերանի գործքերէն քաղած է ուրուագիծ մը "Բիւզանդեան Պատարագի նախ քան Է դար,"* (App. O, p. 527—534), *Մաքսիմոսի* Mystagogia *գրութենէն ուրուագիծ մը Բիւզանդեան Պատարագի Է դարուն* (App. P, p. 534—539) *եւ վերջապէս նոյն Պատարագին Նախերգանին զարգացումը ներկայացուած է մեզ ուրիշ բազմաթիւ գրութիւններէն եւ ձեռագիրներէն քաղելով* (App. Q, p. 539—551), *ի մասնաւորի Պատարագի Մեկնութիւններէն եւ նման գրուածքներէն՝ Գերմանոսի Ա., Կ. Պոլսոյ հայրապետի* († 740), *Թէոդորոսի Ուսումնականի* († 826), *Թէոդորոսի Անդիդացւոյ, Ս. Սոփրոնիոսի, Նիկողայոսի Կաբասիլաս Թեսաղոնիկեցւոյ՝* (1350*ին*), *Սիմէոնի Թեսաղոնիկեցւոյ* († 1429), *վերջապէս Նիկողայոսի Պուլկարիսի եւ ուրիշներու:*[1]

*Այս յիշատակութեանց մէջ պէտք չէ մոռնալ նաեւ "Նախասրբելոց" Պատարագը: Ասի կը յիշուի "Զատկական Ժամանակագրոց"* 645 *տարւոյն ժամանակագրական տեղեկութեանց մէջ,*[2] *որ կ'արժէ հոս յառաջ բերել: "Զայսու ժամանակաւ, — կ'ըսուի հոն, — առ Սարգսիւ պատրիարքաւ Կ. Պոլսոյ՝ յԱռաջին շաբաթու է Պահոց Դ. ընդիքտոնի՝ սկսաւ սաղմոս ասել զկնի այնր՝* "Առաջնորդեսցէ," *յորժամ* Նախասրբեալ ընծայքն (τὰ προηγιασμένα δῶρα) *բերեալ լինին ի խորանն յաւանդատանէ* (ἀπὸ τοῦ σκευοφυλακίου), *զկնի ասելոյ քահանային՝* "Ըստ ընծայէ Քրիստոսի քոյ," *փաղփաղակի սկսանի ժողովուրդն՝* "Արդ եւ զօրութիւնք երկնից ընդ մեզ երկիր պագանեն աներեւոյթս. զի ահա մտանէ Թագաւոր փառաց. ահա զենումն խորհրդական կատարեալ մեծաւ շքով բերի (δορυφορεῖται, *մեր հնոց "ընծայեալ բերի."*) հաւատով եւ երկիւղիւ. զի կցորդ եղիցուք յաւիտենական կենաց. Ալէլուիա:" *Այս ոչ միայն ի պահս՝ յածելն Նախասրբելոց ի ներքս՝* (προηγιασμένων εἰσαγομένων) *երգի, այլ եւ յայլ աւուրս, քանիցս անգամ թէ* Նախասրբելոցն (προηγιασμένα) *մատչի:" Նոյն իսկ այս վկայութիւնը կը ցուցընէ որ՝ ինչպէս միւս երկուքը, նոյնպէս այս երրորդն ալ ժամանակաւ իւր զարգացումն ունեցած է: Այժմու բնագիրն, առանց երկբայութեան, շատ տարբեր է անկէ՝ որուն վրայ* 645*ին վերյի-*

[1] Տես առանց վրայ Brightman, p. XCIII—IV. Մաքսիմոսի *Μυσταγωγία* գրութիւնը՝ Migne, Ser. Gr. XCI, 657—717, եւ այլուր յաճախ. Նոյնպէս՝ Գերմանոսի "Պատմութիւն եկեղեցական եւ խորհրդական տեսութիւնն" (Migne, XCVIII, 384—453), զոր վերն ալ յիշեցինք եւ որուն բնագիրը միջարկութեամբք աղաւաղուած է ԺԱ—ԺԲ դարուն. Թէոդորոսի Ուսումնականի *Ἑρμηνεία τῆς θείας λειτουργίας τῶν Προηγιασμένων* կամ "Մեկնութիւն աստուածային Պատարագի Նախասրբելոց", նախ ծիրանաւոր Մայի ծանօթ գործքին մէջ (Mai, Nova patrum bibliotheca, V, 4, Հռոմ 1849) եւ Migne, XCIX, 1687—90. Թէոդորոսի Անդիդացւոյ՝ անծանօթ ժամանակի մատենագրի՝ "Նախատեսութիւն համառօտման," եւն կոչուածը նոյնպէս նախ Մայի յիշեալ գործոյն մէջ (vol. VI, 2, p. 547ff, Հռոմ 1853, Migne, CXL, 417—68). Սոփրոնիոսի Երուսաղեմացւոյ անուամբ ընծայուած հատակոտոր գործը (Migne, LXXXVII, 3981—4001), եւն եւն: Մնացեալները նոր ժամանակներէն են, որոնց հնագոյնն է Նիկողայոս Կաբասիլասի "Մեկնութիւն աստուածային Պատարագի" (Migne, CL, 368—492):

[2] Հմմտ. Chronicon Paschale, ed. Lud. Dindorf, Bonnae 1832, vol. I, p. 705—6.

չեալ տաղը՝ զոր ուղղակի յունարէնէ նոր Թարգմանեցինք,[1] աւելցուեցաւ։ Հոս ալ հնագոյն օրինակն ու ձեւն Բարբերինեանէն գիտենք, զոր վերը յիշեցինք։ — Երկրորդ կոչում մը նոյն Պատարագէն կայ Տրուլեան 692ի ժողովոյ ԾԲ կանոնին մէջ։ Ժողովը կը սահմանէ թէ “Մեծ Պահոց օրերուն մէջ, ի բաց առեալ Շաբաթ, Կիրակի եւ Աւետման Մարեմայ օրերը, կը մատչի միայն Պրոէգիասմենոն “Նախասրբելոյ։„[2] Վերջապէս նաեւ Յովհաննու Պահեցողի վերը յիշուած դրութեան մէջ կը յիշուի այս Պատարագն ալ։

Ընդհանրապէս թէ ձեռագիրք եւ թէ տպագրութիւնք “Նախասրբելոց„ Պատարագին հեղինակը կ'անուանեն Գրիգոր Տիալոգոս (Gr. Dialogos), որ վերադրով կը յորջորջի Գրիգոր Ա. Հռովմայ քահանայապետը. սակայն այլեւայլ ձեռագիրք ուրիշ անուններ ալ կու տան հոս, ոմանք՝ Եպիփանու, ուրիշները Գերմանոսի Կ. Պոլսոյ. ոմանք դարձեալ՝ Բարսղի.[3] վերջապէս Թէոդորոսի Անդիդացւոյ եւ նոյնութեամբ Սոփրոնիոսի քով գտնուած մէկ կտորը կը վկայէ թէ ոմանք Յակոբայ առաքելոյ կ'ընծայէին, ուրիշները Պետրոսի կամ ուրիշ հեղինակաց։[4] Արդէն այս անուանց ցանկը կը ցուցընէ որ յիշեալ անուանց եւ ոչ մէկն ապահովութեամբ հեղինակ համարելու է Պատարագիս այժմու ձեւին։

Աւելորդ է ըսել որ բազմաթիւ գլուխներ կան հին Յոյներէն այս Պատարագաց մատուցման ժամանակ պահուելու պարագայութեանց վրայ. ի մասնաւորի յատուկ կանոնադրութիւն մը Կոստանդնի Ը ծիրանածնի՝ արքունեաց ներկայութեամբ կատարուելու հանդիսական Պատարագի արարողութեանց մասին, եւ ուրիշ նման գործքեր։[5]

Դառնալով աստից հայերէն Թարգմանութեան՝ պէտք չենք տեսներ այս արդէն երկայն Տեղեկութիւնքն աւելի երկայն ընել կրկնելով այն ամէնն, զոր ըսինք արդէն Բարսղի նոր Թարգմանութեան վրայ խօսած ատեննիս. (տես էջ 175—179։) Այն ամէնը կ'արժէ հոս ալ. վասն զի Բարսղի նոր Պատարագն եւ Ոսկեբերանին իրարմէ անբաժին են նաեւ հայերէնին մէջ։ Յառաջ բերինք հոն Ն. Լամբրոնացւոյ մէկ խօսքն ալ, ուր կ'իմացընէ թէ Ոսկեբերանի Պատարագի “առաւելութիւնն„ մասամբ ինքը լրացուցած է։ Սակայն այն իմաստով առնելու չէ Լամբրոնացւոյն խօսքը թէ ինքը զարգացուցած է Ոսկեբերանի այս Պատարագիս հայերէնը. այլ անոր առաւելութիւնն առնելով ճոխացուցած է իւր ժամանակի Պատարագն, այն՝ զոր մենք Լամբրոնեան կոչեցինք. այնպէս որ կրնար Լամբրոնացի Ոսկեբերանի Պատարագիս համար ըսել թէ “զոր սոհնան ձէ ոչ սոնինէ, եւ ոչ Փռանգք, նաեւ ոչ Հոռոմք„ յայտնապէս ակնարկելով որ

[1] Հայերէն Թարգմանութեան մէջն ալ կայ տաղս. տես վարը Պարգ. Նախասրբելոց (Գլ. 3) Համ. ԺԲ կէտերը. հոն δορυφορεῖται Թարգմանուած է “ընծայաբերի։„

[2] Տես Hefele, Conciliengeschichte, 2. Aufl. Freiburg 1877, III, p. 337. Bruns, Canones etc. I, p. 53, եւ այլուր։

[3] Այսպէս նաեւ հայերէն Թարգմանութիւնը “Աստուածային Պատարագ Քառասնորդացն Պրոէգիասմենոս (= προηγιασμένος, բառ յետնագոյն դարուց հնչմամբ, այսինքն “Նախասրբելոց„), որպէս ալ սուրբ Հօր մերոյ Վասիլիոսի„ (= Βασιλείου, բառ յետնագոյն ժամանակի արտասանութեամբ։)

[4] Տես Brightman, p. XCIII. Եպիփանի կ'ընծայեն Cod. Vatic. Graec. Nr. 1213 եւ Cod. Bodl. Cromw. 11. Գերմանոսի՝ Cod. Bodl. Auct. E. 5, 13. Codd. Corsiniana 41, E, 29 եւ 41, E 31. Բարսղի՝ Cod. Sinai Graec. 1040.

[5] Կոստանդնի "Εκτεσις τῆς βασιλείου τάξεως ի Migne, CXII. ուրիշ այս կարգի արտօնութիւնքն հաւաքած է Փիթրա (Pitra, Juris eccl. Graecorum historia et monumenta, vol. II, Romae 1868) եւ ուրիշներ։

իւր ժամանակն արդէն կար այժմու օրինակաց ճոխացած «Ոսկեբերանի» Պատարագը, բայց տակաւին ամէն մասերով մուտք չէր գտած նաեւ Յունաց շատ եկեղեցիներուն մէջ: Ահա Լամբրոնացւոյ խօսքը.[1] «Արդ պարտ է գիտել թէ Սբր խորհրդածութեան պատարագն (— այսինքն՝ «Աթանասի» անուանեալը —) նախ թարգմանեցաւ քան զհաստատեալն յեկեղեցի սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի աստուածաբանին, որ եղեալ հայրապետ Կոստանդնուպօլսի՝ բազում կարգս ածեցոյց հանդերձ աշխարհալոյս վարդապետութեամբն. ընդ որս եւ Բարսղեան պատարագին համառօտութիւն արար քան զսովորութիւն առաջնոց, զոր սահման մեր ոչ ունիմ եւ ոչ Փռանգք, նաեւ ոչ Յոյնք ըստ այլ հայցն խորհրդոյ: Այլ նէ Յունացն է պատարագ եւ նէ Աթանասին, նախ զՈսկեբերանի ասեն միայն ի կերպարանս ընծայիցն. եւ ապա զնոցայն: Քանզի որպէս եւ ասացաք՝ յետոյ նա հաստատեաց բազմադէմ զօրհնութեանս աղօթագին ի խորհրդեանն ժամու եւ ըստ նոյին աղօթս...: Այս աւանդութեամբս վարի Հռոմայ եկեղեցի. քանզի ասեն նախ զան զխորհրդոյ պատարագին (— ուստի «Նախերգանին» մէջ —) երիս սաղմոս եւ ըստ իւրաքանչիւրոցն քարոզութիւն եւ աղօթք առ ի սրբոյ հօրէս սահմանեալ: Նա յետ այնորիկ ընթերցմունք մի ըստ միոջէ. եւ ոչ յետ աւետարանին ասեն զՀաւատոյն դաշն, այլ յապաղեցուցեալ զնա մինչեւ քահանայն ի վերայ երախայիցն աղօթէ եւ սարկաւագն զնոսին արտաքս առաքէ. եւ բերեալ սարկաւագն զնուէրսն ի սեղանն՝ զսուրբ ողջոյնն աւարտեն, եւ միաբան զՀաւատոյն երգեն» եւն եւն: Լամբրոնացի հոս ճիշդ կը գծէ բիւզանդեան պատարագին ուրուագիծը, գլխաւորաբար Նախերգանին «Ոսկեբերանի,» զոր ունէր առջեւը յաջորդ հայերէն բնագրին համեմատ, թերեւս մէկ երկու բան աւելի հնագոյն ձեւով, այսինքն այնպէս ինչպէս կար ասկէ առնուած եւ դրուած Բարսղի Պատարագին նոր թարգմանութեան սկիզբը:

Մեր հին Պատարագները, ինչպէս բնական է, չունին բիւզանդականին զարգացեալ Նախերգանն: Այս թերութիւնը լրացընելու կամ յունական «աւելորդութիւնը» հայկականին ալ փոխանցելու հոգ տարած են յետոյ մեր Հայրք ալ: Ասով յառաջ եկած են այն խառնուրդ ձեւերն, որոնք յանգեցան ի վերջոյ մեր Սովորականին: Տկար «առաւելութիւն» մը կը ցուցընէ Ղատիկանեան օրինակն (որուն վրայ յետոյ). աւելի ճոխացած առաւելութիւն մը Լամբրոնեանն, քանի որ ինքը Լամբրոնացի ալ խնամ տարած էր այս «առաւելութեան:» Իւր «Խորհրդածութեանց» վերջը յայտնապէս կ'ըսէ Լամբրոնացի. «Եւս խորհրդածութեան առ մեզ աւանդեալ ի սրբոյն Յովհաննու Ոսկեբերանէ սահմանադրութեանցն, աղաչեմ ընդունել սիրով. եւ թէ այլ ոք զան գծեսցէ այլ յետ մեր գեղեցկացուցանէ զնոյնս, եւ զնորայն ի փառս Քրիստոսի» եւն[2]: Ասկէ ալ կը տեսնուի որ Լամբրոնացի չէր համարձակած առնուլ ամէն բան, զոր կը գտնէր «Ոսկեբերանի» Պատարագին մէջ: Բայց աւելի բացայայտ կ'ըսէ ուրիշ տեղ մը Պատարագի Մեկնութեանց մէջ.[3] «Բայց պարտ է գիտել, զի սուրբն Յոհան յե-

[1] «Խորհրդածութիւնք ի կարգս եկեղեցւոյ.» Վենետ. 1847, էջ 188: Ըստ այսմ եւ ըստ յետնոց աւանդելու է վերը՝ էջ 176 դրուած կոչմանց (ծան. 1 եւ 2) կրկին իշխաթուոց սխալ թուարկութիւնը:

[2] Անդ, էջ 192: Հրատարակիչն ուղղութեամբ մտադիր ընել կու տայ այս խօսքին վերջին մասին նկատմամբ թէ «ի Պատարագամատոյցն Յովհաննու Ոսկեբերանի կոչեցեալ առ Յոյնս՝ կան ինչ ինչ, որ չեն ի մերս յաւելեալ:» Այս յաւելումն կամ գեղեցկացընելը՝ ինչպէս կ'ըսէ Լամբրոնացի, իրմէ ետքն ալ բոլորովին կանգ առած չէ:

[3] Անդ, էջ 328:

կեղեցիս Հոռոմոց եւ քարոզութիւն եւ աղօթս է սահմանեալ առնել այժմ (— այսինքն "Մի՛ ոք յերախայից" եւն քարոզութենէն անմիջապէս յառաջ. —) եւ ապա արտաքս զգնալն հրամայէ սարկաւագին. այլ եմ ընկալ–ցեալ է փոխարէն մօրրիկանէ՝ ոչ երբէ ընդոյն է առհման օրինաց։" Աւոր համար Լամբրոնեանը չունի յիշեալ աղօթքը, որ կեցած է "Ոսկեբերանի" Պատարագիս մէջ. (տես վարը Հտծ. Է։)

Զանց կ'առնում յիշել ուրիշ ակնարկութիւնները։ Բաւական է մեզի որ Լամբրոնացի մեր այս Պատարագն իւր "առաւելութեամբ" ունէր՝ արդէն շատոնց թարգմանուած՝ իւր աչքին առջեւ, երբ 1192ի իւր գործքը կ'աւարտէր։ Այս ժամանակէն շատ յառաջ պէտք է որ ծանօթ եղած ըլլայ Հայերէնը. վասն զի կրնանք ապահովութեամբ ըսել որ յաջորդ հայերէն բնագիրը չէ այնպէս մնացած, ինչպէս թարգմանչին գրչէն ելած էր։ Բաւական է միայն Բարսղի Նոր Թարգմանութեան Նախերգանը համեմատել Ոսկեբերանի Նախերգանին հետ։ Ծանօթ է որ գրեթէ Ոսկեբերանի ամբողջ Նախերգանն առնուած դրուած է Բարսղի սկիզբը ճիշդ նոյն լեզուաւ եւ նոյն բառագործածութեամբ, ուստի Բարսղի Նախերգանին թարգմանող կամ գոնէ կազմակերպող հայ գրիչն ունէր արդէն այս Պատարագը (հմմտ. վարը ծան. 1—33, 46—50, 58 եւն.), բայց աւելի հնագոյն ձեւով քան յաջորդ բնագիրը։ Օրինակի համար շօշափելի կերպով կրնանք տեսնել որ հնագոյն ձեւը Բարբերինեանին աւելի համեմատ էր, եւ այնպէս անկէ աղօթքներ առնուած են Բարսղի Նախերգանին կազմութեան համար, որոնք յետոյ փոխուած են յետագայ բիւզանդականաց համեմատ, եւ այնպէս փոխուած կը գտնենք յաջորդ բնագիրը (հմմտ. ի մասնաւորի ծան. 6, 20, 29 եւն։) Այս փոփոխութիւնն է պատճառ՝ որ Բարբերինեանէն աւելի զարգացած կը գտնենք այս Պատարագը, մինչ Բարսղի Նոր Թարգմանութիւնն աւելի հնագոյն բնագիր մը կը ներկայացնէր։ Հոս ալ կան նման տեղեր (հմմտ. ծան. 27, եւն.) բայց քիչ են թուով։

Չենք ուզեր երկարել այս կարգի համեմատութիւնները։ Կարեւորներն արդէն նշանակուած են բազմաթիւ ծանօթութեանց մէջ, որ դրուած են բնագրին ներքեւ։ Եթէ այս համեմատութեանց միտ դրուի, եթէ կշռուի աստ եւ Բարսղի նորոյն հայերէն լեզուի բացարձակ նոյնութիւնը, եւ ուրիշ հանգամանքները՝ կարծենք յանդուգն չի համարուիր այն կարծիքը թէ Բարսղի եւ Ոսկեբերանի բիւզանդական Պատարագաց հայերէն թարգմանութիւնը մէկ ձեռքէ եւ մէկ գրչէ ելած է։ "Նախասրբելոց" Պատարագին համար աւելի կը վարանինք. շատ աւելի խեղճ է հոն թարգմանութիւնն եւ հայերէն լեզուն, աւելի յաճախ յունախօսութիւնք եւ նմանիներ, ի մասնաւորի յունարէն բառաձեւներու նոյնութեամբ պահուիլը։ Անշուշտ քիչ շատ միւսներն ալ նոյն երեւոյթն ունին, օրինակի համար "պռոսխումէն" բացագանչութիւնը. "Ոսկեբերանի" քով կայ նաեւ "Սի Կիրիէ" (σοὶ, Κύριε, տես ծան. 52)։

Արդեօք այս բիւզանդեան Պատարագները գործածուա՞ծ են Հայոցմէ թէ պարզապէս իբրեւ մատենագրութիւն թարգմանուած։ Անշուշտ պարզ իբրեւ մատենագրութիւն թարգմանել չէր թարգմանչին դիտաւորութիւնը. եւ այն ազդեցութիւնն, զոր ունեցած են մեր Պատարագին վրայ՝ կը ցուցնէ որ բոլորովին առանց գործածութեան ալ չէին։ Հայոց մէջ՝ տարակոյս չկայ՝ տիրողն եղած է միշտ "Աթանասի" Պատարագը՝ նախ անխառն եւ Խոսրովեան ձեւով, յետոյ գոնէ

մասամբ Լամբրոնեան ձեւով. մինչեւ որ զարգացաւ Սովորականը։ Բայց անկարելի չէ որ՝ մանաւանդ այն տեղերն ուր Հայք Հոռոմոց ներքեւ եւ շատ բանի մէջ անոնց ծէսին համակերպիլ սովրուած էին, գործածուած ըլլան առնք՝ երբ բիւզանդեան այս մասեանները գերիշխող եղան մոռցնել տալով հինները։ Եթէ ուրիշ տեղ չէ, գոնէ Հայ Հոռոմոց քով կ'ենթադրենք որ գործածուած ըլլան։ Ըստ մեզ ունենալու էին անոնք, գոնէ ուր բոլորովին խափանուած չէր հայերէնը, միւս պաշտամանց գրքերն ալ։[1] Հայ Հոռոմոց պատմութիւնը դժբախտաբար տակաւին չէ ուսումնասիրուած այնպէս՝ ինչպէս պէտք է։

Բայց թէ գործածուած ըլլան կամ ոչ՝ միշտ յարգ ու մեծարանք վայելած են Հայոցմէ ալ, նաեւ ազգային ժողովոց մէջ։ Սսոյ 1307ի ժողովոյն նատած մեր Հարք թէ Բարսղի կանոնէն եւ «Ոսկեբերանի» Նախերգանի սկիզբէն կոչումն կ'ընեն՝ այսպէս.[2] «Մեծն Յովհան Ոսկեբերան ի Պատարագամատոյցն ասէ թէ՝ Մատուցեալ սա ի զինուորացն խոցեաց տիգաւ զկողն նորա, եւ ել վաղվաղակի արիւն, զայս առելով զգինին արկանէ. եւ ասէ՝ Եւ ջուր, եւ զջուրն արկանէ. յայտ առնելով թէ հարկաւոր է խառնումն ջրին ի սուրբ խորհուրդն։ Նոյնպէս եւ սուրբն Դիոնէսիոս ի Պատարագամատոյցն նշանակէ յասելն թէ՝ Առեալ բաժակն՝ օրհնեաց, խառնեաց։» Նոյնը կը կրկնեն 9 տարի ետքը՝ 1316ին՝ Ատանա գումարուող Հարք։[3] Երկու տեղն ալ կոչումն բառ առ բառ է, բայց հայ օրինակի մը համեմատ՝ որ գոնէ հոս բոլորովին նոյն է մեր ձեռքն եղած եւ նոյն ժամանակները գրուած 1314ին Լիոնեանին հետ, բայց ոչ քիչ մ'առաջ 1289ին գրուած Մոնաքոնեանի գաղափարին հետ։ Վերջնոյս մէջ «Մի ոմն ի զինուորաց» դուրս մնացած է, որ՝ ինչպէս նաեւ «ջրոյ» յիշատակութեան պակասը դիւրաւ մեկնելի է։ «Եւ ջուր» յունարէն բնագիրն ի հարկէ կը հաստատէ ժողովոյ Հարց ընթերցուածը։[4] — Ուրիշ մանրամասնութիւնք տես յաջորդ Բնադրին ծանօթութեանց մէջ։

---

[1] Հմմտ. օրինակի աղագաւ մեր օրերուն համար՝ «Մաշտոց հայրենիր հաւաքմամբ հանեալ ի Մեծ Մաշտոցէն Յունաց որ կոչի Էվխոլոգիոն (Εὐχολόγιον τὸ μέγα), նորոգ թարգմանեալ եւ որբագրեալ աշխատասիրութեամբ Անաստասայ մեծիմաստ վարժապետին Յունաց, եւ պատուելի Գէորգ դպրի Փիլիպպոպոլսեցւոյն... հրամանաւ Տեառն Ագաթանգեղոսի... պատրիարքի Յունաց» եւն։ Կ. Պոլիս 1831. 4°, էջք 430։ Սկիզբը (էջ 1—14) կայ՝ «Կարգադրութիւն Սրբազանագործութեան, յորում նկարագրի թէ զիարդ պատարագէ սարկաւագն ընդ քահանային ի մեծի ժամերգութեան երեկոյեան եւ առաւօտեան, եւ ի դուրսն պատարագին, շարագրեալ ի Տէր Փիլոթէոսէ, ի որբազան եւ ի տիեզերական Պատրիարքէ։»

[2] Տես Աղեքսանդր Վ. Պալճեան, Պատմութիւն կթղ. Վարդապետութեան ի Հայս. Վիեննա 1878, էջ 277։

[3] Անդ, էջ 285։ — Հմմտ. նաեւ Կոչումն Սսոյ 1342ի ժողովոյն արձանագրութեանց մէջ, լատիներէնն առ Mansi, Concilia, XXIV, col. 1243.

[4] Յունարէնն է՝ Εἷς τῶν στρατιωτῶν λόγχῃ τὴν πλευρὰν αὐτοῦ καὶ εὐθέως ἐξῆλθεν αἷμα καὶ ὕδωρ... ὁ διάκονος ἐγχέει τῷ ἁγίῳ ποτηρίῳ ἐκ τοῦ νάματος ὁμοῦ καὶ τοῦ ὕδατος κτλ. Հմմտ. Daniel, p. 332, Brightman, p. 357, եւն։ — Սակայն պէտք չկայ ըսել որ Հայ գրիչները հանած են այս կտորը։ Լամբրոնացւոյ, օրինակի աղագաւ, ծանօթ է այս կտորը, թէ գինի եւ ջուր խառնելն է «յայտարարութիւն առ ի կողից Փրկչին կրկնավտակ աղբերացն» (տպ. անդ, էջ 190), սակայն իւր Պատարագին մէջ չէ առած (անդ, էջ 197). եւ պատճառ չկայ կարծելու թէ հոն ալ հանուած ըլլայ յետիններէն։ Նաեւ Բարբերինեանն՝ ուրիշ խրատագրոց եւ Նախերգանին մասերուն հետ, այս աղօթքն ալ չունի։ Ըստ այսմ հոս M աւելի հին բնագիր մը կը ցուցընէ քանի L եւ Սսոյ ժողովոյն օրինակը։

# Բ.

## ԲՆԱԳԻՐ "ՅՈՎՀ. ՈՍԿԵԲԵՐԱՆԻ" ՊԱՏԱՐԱԳԻՆ[1]

*ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ ԱՍՏՈՒԾՈՎ, ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է ՍՐԲՈՅ ՀԱՒՐՆ ՄԵՐՈՅ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՏԻԵԶԵՐԱՔԱՐՈԶ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ*[2]

## Ա. ՆԱԽԵՐԳԱՆ

### ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ[3]

Է. — *Նախ ասի սաղմոս՝* Յիշեա Տէր զԴաւ.։ *Եւ ի կատարմանն սարկաւագն քարոզէ.* Եւ եւս խաղաղ.։ *Դպիրն Գ* Տէր ողորմեա։ *Քահանայն.* Որ զգեցեալ ես զլոյս որպէս հանդերձ, Տէր մեր Յիսուս Քրիստոս,

---

Պատարագամատուցիս հրատարակութեան հիմն առնուած է M կամ Մոնաքոնեան օրինակը, (տես վերն՝ էջ 85, § 4), իսկ Լիոնի օրինակէն (L, տես վերը՝ էջ 82, § 6) միայն քանի մը մասեր ունէինք առձեռնիս՝ որոնք յատկապէս արժանի էին ուշադրութեան՝ տարբերութեամբն ընթերցուածոց։ Թէեւ բառ առ բառ ամէն տեղ չենք կրնար նշանակել Լի ընթերցմունքը, բայց՝ ընդհանրապէս խօսելով՝ ուր բառ մը չէ նշանակուած, L ալ կը միաբանի Mի ընթերցուածոց։ Ասկէ զատ համեմատեցինք "Աբեանոսի" Պատարագին Լամբրոնեան Օրինակներ՝ N եւ MA (տես վերը՝ էջ 270, § 4—5, միայն թէ շփոթութիւն չըլլալու համար MA համառօտութիւնն ընտրեցինք հոս փոխանակ

Ա. [1] Ոսկեբերանի անուն կրող Պատարագս յընդհանուրն նոյն է յունականին հետ (տես Daniel, p. 327—372, Goar, p. 58—157 ծանօթութեամբք եւն։) Յոյն բնագիրը չափազանց պէսպիսութեամբ հասած է մեզի այլեւայլ ձեռագիրներով, ընդհանրապէս գրեթէ հայերէն այս թարգմանութեան կրկին ծաւալն ունենալով՝ բազմաթիւ յաւելուածներով։ Անոր համար անկարելի եւ վախճանազուրկ էր՝ յունարէն օրինակաց, որոնք իրարմէ երբեմն բոլորովին աննման իսկ ըլլալու չափ տարբեր են, ամէն մէկ շեղումն, յաւելուածներն եւն հոս նշանակել։ Մեր ճիգն եղած է հայերէնին ունեցած մասերն համեմատել, եթէ եւ ինչ ձեւով կան անոնք յունական այս կամ այն խմբագրութեան մէջ։ Գրեթէ ամբողջ Նախերգանը քիչ տարբերութեամբ գրուած ըլլալով Բարսղի Պատարագին սկիզբն եւ հոն համեմատուած (տես վերը՝ էջ 180—195), հոս կրկին չենք համեմատեր, ուր նոյն է բնագիրը, այլ միայն նշանակած ենք նոյն էջերն եւ ծանօթութեանց թուերը։ Հայերէնն աւելի համաձայն է Բարբերինեան օրինակին, ինչպէս բնականն է, ուստի աւելի անոր հետ համեմատած ենք, (տես ի մասնաւորի Goar, p. 98—100։) Daniel բաց ի Բարբերինեան օրինակին ընթերցուածներէն (B), նշանակած է նաեւ գլխաւոր տարբերութիւնքն Պարիսեան ձեռագրին (P) ԺԵ դարէն, Սիկիլիոյ եւ Իտալիոյ յոյն կրօնաւորաց գործածած Պատարագամատոյցը (C կամ Cod. Crypto-Ferratensis), Morelliի հրատարակութիւնն ի Վեն. 1560ին (Mor.) եւ Goarի հրատարակութիւնն (G) եւն։ Ուր պէտք ըլլայ՝ այս համառօտութիւնքն մենք ալ պիտի գործածենք։

[2] B կամ Բարբերինեանն ամենեւին խորագիր չունի։ Միւս յոյն ձեռագիրք սովորաբար հոս չունին Ոսկեբերանի անունը խորագրին մէջ, այլ պարզապէս "Կարգ աստուածային եւ սուրբ Պատարագին" եւն. իսկ Mor. ունի անունն ալ, այսպէս՝ Διάταξις τῆς θείας καὶ ἱερᾶς λειτουργίας τοῦ ἐν ἁγίοις πατρὸς ἡμῶν Ἰοάννου τοῦ Χρυσοστόμου.

[3] Այս ամբողջ Պատրաստութեան մասն պարզ քաղուածք մըն է՝ եթէ համեմատենք յոյն օրինակաց հետ, որոնք տասնապատիկ երկայն

*անճառելի խոնարհութեամբ ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան շրջեցար. որ եղեր քահանայապետ ճշմարիտ ըստ կարգին Մելքիսեդեկի, եւ զարդարեցեր զեկեղեցի քո սուրբ: Տէր ամենակալ, որ պարգեւեցեր եւ մեզ զնոյն զերկնային զհանդերձ զգենուլ, արժանի արա եւ զիս ի ժամուս յայսմիկ զանպիտան ծառայս քո, որ համարձակիմս եւ մերձենամ ի նոյն հոգեւոր պաշտաւն փառաց քոց. որպէս զի զամենայն անբարշտութիւն մերկացայց՝ որ է հանդերձ պղծութեան, եւ զարդարեցայց լուսով քո: Ընկեա յինէն զչարիս իմ եւ թաւթափեա զյանցանս իմ. որպէս զի արժանի եղէց հանդերձեալ լուսոյդ առ ի քէն: Շնորհեա ինձ քահանայական փառաւք մտանել ի պաշտաւն սրբութեանց քոց ընդ այնոսիկ, որք անմեղութեամբ պահեցին զպատուիրանս քո. զի եւ ես պատրաստ գտայց երկնաւոր առագաստին ընդ իմաստուն կուսանսն փառաւորել զքեզ Քրիստոս, որ բարձեր զմեղս ամենեցուն: Դու ես սրբութիւն անձանց մերոց, եւ քեզ բարերարիդ Աստուծոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ: — Դպիրն. Ամէն:*

---

պարզ M տառին) ճիշդ այնչափ եւ այնպէս՝ ինչպէս ըրինք վերն Ե Պատարագին համար (տես էջ 272 եւն), այսինքն Լամբրոնեանի բոլորովին յատուկ խրատագիրքն եւն դուրս թողլով՝ արդէն յետոյ իրեն տեղը դնելու ստիպուած ըլլալով: — Նոյն կերպով միօրինակութեան համար ու — ուղղագրութիւնն ընտրեցինք (ըստ M եւ MAի), մինչ L եւ N միշտ օ ունին. ընդհակառակն M եւ MAի հրամայականաց վերջաւորութիւնք (“կեցոյ,„ “բաւականացոյ„ եւն) չպահեցինք. ուստի առոնք չենք կրկներ համեմատութեան մէջ: — Գլխագիր խորագիրք (Նախերգան, Պատրաստութիւն եւն)՝ ինչպէս նաեւ Ա—ԻԲ համառօտ բաժանմունք մեզմէ են: ՀՐՏՐ.

Վերնագիրն այսպէս ունի L “Պատարագամատոյց Աստուծով, զոր արարեալ է սրբոյ հօրն մերոյ Յոհաննու Ոսկեբերանոյն Կոստանդնուպոլսի պատրիարքին:„

Ա. ‖[5] L տարբեր խորագիր մ'ունի սկիզբն. “Նախ ասէ Սաղմոս. Դատ արա ինձ Տէր, զի ես յանբ[ծութեան, եւն:] Սարկաւագն քարոզէ. Խնդրեսցուք հաւատով: Ե— ԺԲ. Տէր ողորմեա: Քահանայն ասէ զաղօթքն. Որ զգեցեալ ես զլոյս„ եւն: N եւ MA ի հարկէ շատ կը շեղին հոս եւ այլուր՝ իրենց յատուկ մասերովն, զորոնք տես յետոյ ի կարգին: ‖[7] Աղօթքս տես ի N (տպ. էջ 193) եւ MA բոլորովին նոյն: ‖[10] “Ամենակալ„ չունի N, բայց ունի MA՝ ինչպէս նաեւ LM: ‖[11] N զերկնային հանդերձն, MA զերկնային հանդերձ: ‖[12] N զծառայս քո. իսկ MA = LM: ‖[13] N եւ MA ամբարշտութիւնս: ‖[16] MA ի պաշտաւնն: ‖[21] N եւ MA չունին “Դպիրն. Ամէն:„ — Ասկէ ետքն եկող Զգեստաւորման մասն ի հարկէ տասնապատիկ աւելի է Լամբրոնեանց քով, մինչեւ յաջորդ (Բ) հատածին սկիզբը. (տես N, տպ. էջ 194—197 եւ վարն ի

Պատրաստութեան մաս մ'ունին (տես Daniel, p. 327—337:) Սակայն ճշդիւ Բարսեղինեան օրինակն՝ հայոյն պէս եւ աւելի եւս՝ այս ամէնը չունի, եւ կը սկսի աղօթքով մ'որուն տեղն է այժմ հայոյն մէջ “Տէր Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ„ եւն (Հտծ. Բ:) Ըստ այսմ ոչ B եւ ոչ հայ թարգմանիչը տեսած էին այն յաւելուածոյ մասերն: Տարբեր է Պատրաստութիւնն նաեւ Բարսղի Պատարագին սկիզբն (տես էջ 180—182:) Ըստ այսմ հայոյն ունեցած այս Պատրաստութեան գլխաւոր աղօթքն (“Որ զգեցեալ ես զլոյս„ եւն, նոյնը մեր այժմու Պատարագին մէջ՝ տպ. “Խորհրդատետր„ Վիեննա, 1858, էջ 4—5) չկայ Ոսկեբերանի Պատարագի յոյն օրինակաց մէջ: — Ամբողջը (Հտծ. Ա) յայտնապէս մեր ասորական պատարագէն ներմուծուած ըլլալու է:

[4]Եւ ապա զգենու զհանդերձն սաղմոսելով. Դատ արա ինձ Տէր, զի ես յամբծու.: Եւ առնէ զաւտի եւ արկանէ ուրար ասելով. Քահանայք քո զգեցցին զարդ[արութիւն, եւն:] Եւ ագանէ զփիլոնն ասելով. Ցնծասցէ անձն իմ ի Տէր, զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան եւ պատմուճան ուրախութեան. իբրեւ փեսայի եդ ինձ պսակ, եւ որպէս զհարսն զարդու զարդարեաց զիս:

ՅԱՌԱՋԱԴՐՈՒԹԻՒՆ

Բ. — [5]Եւ ապա առնու զհացն դնէ ի մաղզմայն ասելով. Յիշատակ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Եւ առեալ զգինի արկանէ խաչանիշ ի սկիհն ասելով. Յաղագս յիշատակի փրկագործ անաւրէնութեան Տեառն Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: — Սարկաւագն քարոզէ Եւ եւս խաղաղութեան, զՏէր: Դպ. Գ Տէր ողորմեա:

Քահան. [6]Տէր Աստուած մեր,[7] որ զերկնաւոր հացդ՝ զՏէր մեր Յիսուս Քրիստոս, զկերակուրդ ամենայն աշխարհի, առաքեցեր Փրկիչ եւ կե-

կարգին:) ‖[24] M բուն "զգեցին:„ — Ինչպէս միշտ՝ նոյնպէս հոս եւ յաջորդներուն մէջ ձեռագիրք շատ բան համառօտութեամբ կը նշանակեն: Ասոնք՝ որչափ կարելի էր եւ կարեւոր՝ պահեցինք. ուր լրացընել պէտք եղաւ [ ] փակագծի մէջ դրինք:

Բ. ‖[29] L այսպէս ունի. "...Եւ գինի արկանէ ի սկիհն խաչանիշ եւ Ջուր ասելով. Յաղագս յիշատակի փրկագործ անօրէնութեան Տեառն Աստուծոյ եւ Փրկչին մեր Յիսուսի Քրիստոսի: Իսկ մի ոմն ի զինուորացն խոցեաց զկողն Յիսուսի, եւ վաղվաղակի ել արիւն եւ ջուր: Աստուած Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ„ եւն: N եւ MA հոս ընդհանրապէս Mի համաձայն են. (տես վարն ի կարգին:) ‖[34] N եւ MA այսպէս կը սկսին Աղօթքս խորագրով մը. N "Եւ քահանայն ասէ զաղօթս զայս, սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի.„ MA "Եւ քահանայն ասէ զաղաւթս զայս ի վերա[ձայն]. Յոհան Ոսկեբերանին է:„ Երկուքն ալ ունին սկիզբը՝ "Աստուած Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ„

[4] Զգեստաւորման աղօթքները լիակատար են յունականաց քով (B չունի.) հոս: "Փիլոնէ„ զգեստաւորման կտորը յունականաց մէջ "Պարփուան„ զգենլու խորագիրը կը գրէ (καὶ ἐνδύεται τὸ στοιχάριον, լատ. tunica.) C ձեռագիրը "Փելոնէ„ (εἰς τὸ φελώνιον) զգեստաւորման համար կ'որոշէ բոլոր "Քահանայք քո զգեցցին„ եւն, որ հայոյն մէջ "Ուրարէ„ համար դրուած է: Տես Dan. p. 329.

Բ. [5] Ասկէ թերեւս կը սկսէր հայոյն թարգմանութիւնը, թէեւ B կամ Բարբ. սկզբան երկու երեք տողն ալ տակաւին չունի: Առաջին "Յիշատակ Տեառն„ եւն ճիշդ այնպէս կայ յունականին մէջ (տես Dan., p. 331), բայց գինւոյնը տարբեր է (Dan., p. 332). Cի համեմատ կ'ըսէ քահանայն՝ "Մի ոմն ի զինուորաց տիգաւ խոցեաց զկողն, եւ ել վաղվաղակի արիւն եւ ջուր„ եւն զոր ունի միայն L հայ ձեռագիրը. Խորատագիրքն ի հարկէ բոլորովին տարբեր են յունականաց քով:

[6] Հոս կը սկսի B առանց խորագրի. միւս ձեռագիրք εὐχὴ τῆς προθέσεως (Աղօթք Յառաջադրութեան, տես Dan., p. 338:) Բարսղի Պատարագին սկիզբն անոր տեղ ուրիշ աղօթք մը կայ գրուած. (տես վերն՝ էջ 181, ծան. 4) որ կը սկսի՝ "Տէր Աստուած մեր որ զենար զառն անբիծ„ եւն: Արդ ճիշդ այս աղօթքն ունի հոս Բարբերինեանը (Goar, p. 98) եւ այն ճշդիւ նոյն հայերէնին հետ: Տարակոյս չկայ ուրեմն որ այս աղօթքը կար հոս նախնական հայերէնին մէջ, որմէ առած Բարսղի Պատարագին սկիզբը դրած է ձեռք մը: Մեր այս Պատարագին մէջ դուրս ձգուած է այն աղօթքն, (ինչպէս եւ երբ չենք գիտեր.) եւ անոր տեղը բռնած "Տէր Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ„ աղօթքն (նաեւ մեր ամբողջական Պատարագին, տես Խորհրդատետր, Վեն.

ցուցիչ եւ բարերար՝ աւրհնել եւ սրբել զմեզ․ ինքնին դու աւրհնեա զառաջադրութիւնս զայս․ ընկալ զսա յերկնային քո սեղանդ։ Յիշեա որպէս բարերար եւ մարդասէր զմատուցողս եւ վասն որոց մատուցանի, եւ զմեզ անդատապարտս պահեա ի քահանայագործութիւն աստուածային խորհրդոց քոց։ [8]Զի սուրբ եւ փառաւոր է ամենապատիւ մեծվայելչութիւն փառացդ Հաւր եւ Որդ․։ — Դպ.[9] Ամէն։

[10]Եւ ապա խնկէ ի վերայ ընծայիցն, եւ ծածկէ դաստառակաւ սաւելով. Տէր Թագաւորեաց վայելչութիւն զ[գեցաւ, եւն։] Եւ ապա խունկ մատուցանէ սաւելով զաղաւթս. Խունկ մատուցանեմ առաջի քո Քրիստոս բուրումն հոգեւորական։ Ընկալ ի սուրբ եւ յերկնային եւ յիմանալի քո մատուցարանդ ի հոտ անուշից։ Առաքեա առ մեզ փոխարէն զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյդ սրբոյ․ եւ քեզ փառս մատուցանեմք ընդ Հաւր եւ Հոգւոյդ սրբոյ։

## Խ Ա Ղ Ա Ղ Ա Կ Ա Ն Ք   Ե Ւ   Պ Ա Տ Ա Ս Խ Ա Ն Ի Ք

Գ․ — [11]Եւ ապա ելանէ սարկաւագն ի խորանէն. երկրպագէ երիցս եւ վերածայնէ առ քահանայն. Աւրհնեա Տէր։

---

եւն (= L)։ ‖36 N "...կեցուցիչ, բարերար եւ մարդասէր, օրհնել զմեզ. ինքնին դու օրհնեա Ե– զառաջադրութիւնս զայս. յիշեա" եւն. ուստի բաւական տարբեր. իսկ MA համաձայն է հոս M եւ L ձեռագրաց։ ‖38 N չունի "եւ մարդասէր," MA ունի. բայց յաջորդին մէջ N եւ MA "վասն որոյ... անդատապարտ" եւն։ ‖40 Միայն N "եւ փառաւորեալ է։" — Աղօթքիս ծայրը "Դպիրն Ամէն" չունի MA, բայց ունի N = L եւ M։ ‖42 L այսպէս ունի. "Ե– Սարկ. ծածկէ զընծայսն սաւելով. Տէր թագաւորեաց։ Քհ. խնկէ զընծայսն սաւելով. Խունկ մատուցանեմ" եւն։ ‖46 N "Ե– առաքեա" եւն. MA = L եւ M.

1856, էջ 26), այն այնչափ աւելի դիւրութեամբ, որ նոյնը մուծած էին արդէն Բիւզանդեանք "Ոսկեբերանի" Պատարագին յոյն բնագրին մէջ. (քանի մը տարբերութիւնքն տես յաջորդաց մէջ։) Յամենայն դէպս Բարսղի Պատարագին սկզբան "Նախերգանն" աւելի կանուխ է ժամանակաւ քան "Ոսկեբերանի" Պատարագի արդի ձեւն. միւս կողմանէ այս հայերէն Թարգմանութեան նախնականը կար արդէն այն ժամանակ։

[7] Յունականք՝ "Աստուած Աստուած մեր," — "Զառաջադրութիւնս զայս" ճշդիւ ըստ յունականին (τὴν πρόθεσιν ταύτην), նոյնպէս՝ "ի քահանայագործութիւն," որ ըստ յունին ըլլալու էր՝ "(անդատապարտս պահեա) ի քահանայագործութեան" եւն (ἐν τῇ ἱερουργίᾳ, կամ "ի նուիրագործութեան"։)

[8] Հոս յոյնը կը կցէ "ի ձայն" խորագիրը. իսկ փառաբանութիւնը քիչ մը տարբեր, անով որ "ամենապատիւ եւ մեծվայելչական անուն քո Հօր եւ Որդւոյ" եւն կ'ըսուի։ Հայոյն այս փոքր չեղումն ալ ճիշդ առնուած գրուած է Բարսղի Պատարագին սկիզբը. (էջ 181, տող 15—16։)

[9] Յունականաց մէջ այս "Ամէն" կցուած է աղօթքին ծայրն առանց Դպրի կամ Դասու յիշատակութեան։ Անկէ ետքը յունականք դարձեալ կ'առատանան։ (Dan., p. 338–9։)

[10] Ասկէ մինչեւ Բ. Հատածին վերջը կայ յունականաց մէջ (B չունի), բայց ուրիշ տեղ, այսինքն նախընթաց աղօթքէն ալ յառաջ, (տես Dan., p. 336) եւ բազմաթիւ նման մասերով ճոխացած։ Նախ կու գայ խնկարկութեան Աղօթքը (εὐχὴ τοῦ θυμιάματος) կամ "Խունկ մատուցանեմ" աննշան տարբերութեամբ հայերէնէն ("եւ փառս մատուցանեմք" եւն վերջաւորութիւնը չկայ յունարէնին մէջ։) Անկէ ետքն է դաստառակաւ ծածկելու աղօթքը՝ "Տէր Թագաւորեաց" եւն։ Բարսղի Պատարագին սկիզբը տարբեր է խնկարկութեան աղօթքն. (տես վերն էջ 181—2։)

Գ. [11] Հոս (Հած. ԺԴ հրա. Danielի) ամէն յունական օրինակք կը դնեն սա խորագիրը՝

Քահանայն բարձր.[12] Աւրհնեալ թագաւորութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտ.։ — Ժողո[վուրդն.] Ամէն։

Սարկաւագն բարձր եւ ի Թիւ քարոզէ առ դուռն խորանին.[13] Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ Ժողո. Տէր ողորմեա։ — Սար. Վասն ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց զՏէր [աղաչեսցուք։] — Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի եւ հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ եւ ամենեցուն աւրհներգութեան, զՏէր։ — Վասն սրբոյ տաճարիս եւ որոց հաւատով ընկալեալ զերկիւղ Տեառն աղաւթեն ի սմա, զՏէր։ — Վասն հայրապետին մերոյ այս անուան կենաց եւ փրկութեան հոգւոյ, զՏէր։ — Վասն պատուական քահանայից եւ որոց ի Քրիստոս սարկաւագաց եւ ամենայն ժառանգաւորաց եկեղեցւոյ։ — Վասն բարեպաշտ եւ աստուածապահ թագաւորին մերոյ եւ ամենայն պաղատանն եւ ամենայն զինուորաց նորա, զՏէր աղ.։ — Վասն լինելոյ նորա յաղթող, եւ խորտակելոյ զամենայն թշնամիս առ ոտս նորա, զՏէր։ — Վասն քաղաքաց եւ գաւառաց եւ որոց հաւատով բնակեալ են ի նոսա, զՏէր աղ.։ — Վասն պտղաբերութեան երկրի եւ ժամանակաց, զՏէր։ — Վասն ճանապարհորդաց, նաւորդաց, վաստակաւորաց, եւ վասն գերեաց փրկութեան, զՏէր աղաչ.։ — Վասն փրկելոյ զմեզ ի վշտաց եւ ի նեղութենէ, զՏէր աղ.։ — Ընկալ կեցո եւ ողորմեա եւ պահեա զմեզ Տէր քոյին շնորհիւդ։ — Ժողո. Կեցո, Տէր։ — Զամենասրբուհի Աստուածածինն, զաւրհնեալ տիրուհին եւ զմիշտ կոյսն Մարիամ, յիշեսջիք եւ զամենայն սուրբս եւ նոքաւք զՏէր աղաչեսցուք։ — Եւ եւս մի.։ Զանձինս։ Ողորմեաց մեզ, Տէր։[14]

Գ. ||[49–50] Խորագիրքս (ինչպէս այլուր) տարբեր են ի հարկէ ի N եւ MA։ ||[57] Այսպէս նաեւ MA («եւ ամենեցուն ուղղափառութեան.») իսկ N «եւ ամենայն օրհներգողաց։» ||[58] Միայն N «զերկեղ։» ||[59] «Այս անուն» LM, նաեւ MA. բայց չունի N։ ||[65] Ի M նախ «հաւատով+ բնակեալ» եւն գրուած է, յետոյ ուղղուած «հաւատով։» ||[67] Միայն N «եւ վասն փրկութեան գերեաց։» ||[68] N «եւ ի նեղութեանց.» MA = L եւ M։ ||[69] N չունի «եւ ողորմեա» բառերը, զորոնք ունի նաեւ MA. իսկ M բուն կը գրէ՝ «Ընկալ կեցոյ ...քոյին շնորհիւդ» եւն. նոյնպէս՝ այլուր։ ||[74] M ձեռագրին «Եւ եւս մի.» համառօտութիւնը կը համաձայնի MA ի ընթերցուածոյն՝ «Եւ եւս միա-

«Աստուածային Պատարագ... Յ-ՎՀ. Ո-ւիլբէ-րանէ,» ուստի այս տեղը կը դնեն իբրեւ բուն սկիզբ Պատարագամատոյցին։ — Սարկաւագի քարոզութիւնը «Աւրհնեա Տէր» ունի յոյնը, բայց ոչ խորագիրն «Եւ ապա ելանէ» եւն։

[12] Յ. (= Յոյնը) Ὁ ἱερεὺς ἐκφώνως (...է յոյն։)

[13] Խորագիրս չունի Յ. որ սոսր տեղ կ'ըսէ թէ Ժողովուրդն յաջորդ սարկաւագի քարոզութեան իւրաքանչիւր տան իբրեւ Պատասխան պիտի կցէ «Տէր ողորմեա» մը։ — Քարոզութիւնքս կամ «Խաղաղականքս» աննշան տարբերութեամբ առնուած գրուած են Բարսղի Պատարագին սկիզբն, ուր յունարէնին քիչ տարբերութիւնքն ալ յիշած ենք. (տես վերն՝ էջ 182—184, եւ Ծան. 7։) — B սոսնք եւ յաջորդները չունի տակաւին։

[14] Յոյնը Խաղաղականաց կը կցէ՝ «Քհ. է յոյն. Զի քեզ վայելէ ամենայն փառք» եւն, եւ երկար խորագիր մը աղօթքէն յառաջ։ Բայց յոյն ձեռագրաց տարբերութիւնք հոս եւ ընդհանրապէս ամէն տեղ այս Պատարագին մէջ՝ շատ մեծ է։

### ԱՂՕԹՔ ԱՌԱՋԻՆ ԿՑՈՐԴԻՆ[15]

(Քահ.) Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ անքնին է, եւ փառքդ անհասանելի, որոյ ողորմութիւնդ անչափ է եւ գթութիւնդ անբաւ։ Դու ըստ առատ մարդասիրութեան քում նայեա ի ժողովուրդս քո եւ ի տաճարս յայս սուրբ. եւ արա ընդ մեզ եւ ընդ աղօթակիցս մեր առատապէս զողորմութիւն քո եւ զգթութիւն։ — Ի ձայն. Զի քեզ վայելէ ամենայն փառք, պատիւ եւ իշխանութիւն, այժմ եւ։ — Դպիրն. Ամէն։

[16] Եւ ապա պաշտեն ի ձայն. Բարի է խոստովան լինել Տեառն, սաղմոս ասել անուան քում բարձրեալ։ (Դկ. Ստ.) Բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնին փրկիչ կեցո զմեզ։ Ասա մինչեւ վճարի փոխ։ Փառք Հաւր եւ Որդւոյ։ Բարեխաւսութեամբ սուրբ։ Այժմ եւ միշտ։ Բարեխաւս.։

### ԱՂՕԹՔ ԵՐԿՐՈՐԴ ԿՑՈՐԴԻՆ[17]

Քահանայն խոնարհի եւ զ[աղաւթս ասէ.] Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս քո. զլրումն եկեղեցւոյ

---

բանութեամբ վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս՝ զՏէր աղա.„ իսկ N սոր տեղ կ'ըսէ՝ “Եւ եւս առաւել վասն միմեանց եւ միաբան ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս՝ զՏէր աղա.։„ — MA չունի “Զանձինս մեր„ հոս նշանակուած, իսկ վերջը կը յաւելու թէ “Ժողով. Գ՝ Տէր ողորմեա„ ըսելու է, զոր ընդհակառակն չունի N. բայց այս կարգի համառօտութեանց զանցառութիւնք եւն աննշան են բնագրին համար։ ‖[74] M “ան-

[15] “Ա. Կցորդի„ աղօթքս տես վերը՝ էջ 184—5 եւ ծան. 8—11։ Միայն թէ նախ քան “ի ձայն„ վերջաւորութիւնը՝ համառօտ խաղաղականք եւ Պատասխանիք կան, ինչպէս կը վկայեն նաեւ Բարսղի սկիզբը դրուած յիշեալ կտորները (համտ. անդ, ծան. 10.) իսկ վերջաբանն է “Զի քո է կարողութիւն„ եւն (անդ, ծան. 11) Danielի բնագրին մէջ, իսկ Goar՝ հայոյն համեմատ է։

[16] “Փոխանձայնի այս մասը չենք գտներ յունականաց մէջ, թէեւ կայ Բարսղի քով ներմուծուած ասկէ. (վերն էջ 185, ծան. 12։) Աստ տեղը եւ յաջորդ աղօթքէն յառաջ Ց. ունի սա խորագիրը՝ “Եւ նոյնպէս սաղմոսէ սաղմոսողացն զԲ. կցորդն. [ի]սկ Սարկաւագն զնոյն ասէ՝ որպէս յառաջին աղօթս։„ C եւ Mor. շատ կը շեղին հայերէնէն. C հոս ունի “Միածին Որդի„ ժամամուտը։

[17] Ամբողջն ասկէ առնուած՝ տես վերն էջ 185 եւ ծան. 13—16։ Եթէ ուրիշ կռուան ալ չըլլար՝ “ողջունել„ բային այս գործածութիւնը կը վկայէր Բարսղի Նոր Թարգմանութեան Նախերգանին այս հայերէն թարգմանութենէն կախում ունենալը։ — Սարկաւագին Քարոզութիւնն ալ հոս՝ ճիշդ ինչպէս հոն՝ համառօտ է հայերէնին մէջ, նոյնպէս “Զի քո է կարողութիւն„ վերջաբանին հոս ալ գտնուիլը. (տես անդ, ծան. 15—16։) Իսկ փոխանձայնը չկայ շատ մը յունականաց քով, բայց միայն C օրինակին մէջ՝ քիչ մը յառաջ, այսինքն Առաջին Կցորդին ծայրը (տես Dan., p. 342, Cap. XVI ծան.) եւ սոր ճիշդ կից՝ ինչպէս հայերէնին մէջ՝ յաջորդ ժամամուտը։

Ժամամուտիս համար ըսած էինք որ հաւանականօրէն Թարգմանչէն չէ դրուած Բարսղի Պատարագին սկիզբն (տես էջ 185—6, ծան. 17։) Նոյն կարծիքն ունինք Ոսկեբերանի առնուած այս Պատարագին Թարգմանչին մասին. այնու որ նաեւ յունական ամենահին Բարբերինեան օրինակը չունի այսպիսի ժամամուտ մը, (ինչպէս եւ ոչ այս Ա—Գ կցորդներն), այլ ուրիշ ժամամուտ մը ճիշդ կից “Տէր Աստուած մեր որ զենար„ եւն (տես քիչ մը վերը՝ ծան. 6) աղօթքին, այսպէս՝ “Բարերար եւ ամենայն արարածոց արարիչ, ընկալ զեկեղեցիս՝ որ առաջ կայ. բաշխեա իւրաքանչիւր զաւգտակարն, եւ ած զամենեսեան ի կատարելութիւն, եւ արժանիս արա զմեզ արքայութեան.„ աղօթք մը՝ որ քա-

քո պահեա. սրբեա զհոգիս որք ողջունեն սիրով զվայելչութիւն տան քո։ Դու զմեզ փառաւորեա աստուածային զաւրութեամբ քով, եւ մի թողուր զյուսացեալքս ի քեզ։ — *Սար.* Ընկալ կեցո եւ պ[ահեա, եւն։] — *Ժողո.* Կեցո, Տէր։ — *(Սար.)* Զամենասուրբ Աստուածածնին, զարգահնեալ տի.։

*Քահանայն բարձր ասէ.* Զի քո է կարողութիւն եւ զաւրութիւն եւ փառք, այժմ եւ միշտ։ — *Ժողո.* Ամէն։ — *Փոխաձայն.* Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ։ Բարեխաւսութեամբ սրբոց քոց Տէր Փրկիչ կեցո զմեզ։ *Մինչեւ վճարի փոխս։* Փառք Հաւր։ Բարեխաւսութեամբ։ Այժմ եւ միշտ։ Բարեխաւսութեամբ։ — [*Ժամամուտ.*] Միածին Որդի եւ Բանդ Աստուած։ Եւ անմահ էութիւն։ Որ յանձն առեր մարմնանալ ի սուրբ յԱստուածածնէն։ Եւ ի միշտ կուսէն անփոփոխելի։ Մարդ եղեալ եւ խաչեցար Քրիստոս Աստուած։ Մահուամբ զմահ կոխեցեր։ Մինդ ի սրբոյ Երրորդութենէն, փառաւորակից ընդ Հաւր եւ ընդ սրբոյ Հոգւոյ, կեցո զ[մեզ։]

## ԱՂԱՒԹՔ ԵՐՐՈՐԴ ԿՑՈՐԴԻՆ[18]

*Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.* Որ հասարակաց զայս եւ միաձայն մեզ ամենեցուն ուսուցեր աղաւթել. եւ զերկուց եւ զերից միաձայնելոց յա-

---

քնեին։„ ‖77 Միայն N "զողորմութիւնս քո։„ ‖78 Լուսանցքի վրայ գրուած է ի M "Է յայն„ խորագիրն, ինչպէս նաեւ քիչ մ'եաքն (տող 81) "Դկ. Սփ.„ (Սաեղի։) MA հոս չունի "ի ձայն„ կամ նման բառ մը, իսկ N "Բարեխ„ կ'ըսէ։ Վերջաւորութիւնն ալ N եւ MA այսպէս ունին՝ "Զի քեզ վայելէ ամենայն փառք, պատիւ եւ իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից։ Ժողով. Ամէն։„ Յաջորդ փոխերը քիչ մը տարբեր են ի N եւ MA (տես վարն ի կարգին։) ‖87 Նաեւ MA "որք ողջունեն.„ իսկ N "որք ողջունեցէն։„ ‖88 (L եւ) M "զաւրութեամբ քո.„ N եւ MA "...քով։„ ‖90–99 Այս ամէն փոխառացութիւնք եւն չունին հոս N եւ MA, որ այսպէս կ'ըսեն հոս՝ "...զյուսացեալքս ի քեզ։ Ի յայն. Զի քո է կարողութիւն եւ զօրութիւն (MA զաւրութիւն) եւ փառք այժմ եւ միշտ (MA եւ յաւիտ.։) Խաղաղութիւն. (MA խաղաղութիւն ամենեցուն։) Ժող. Եւ հոգւոյ քում։ Սրկ. Աստուծոյ երկրպագեսցուք։ Ժողո. Առաջի քո Տէր։ — Որ հասարակաց զայս„ եւն։ ‖95 "Ժամամուտ„ խորագիրը մենք դրինք. M առանց խորագրի եւ բաժանման կը կցէ (նոյնպէս N եւ MA, որ վերն ունէին զայս, տես տպ. էջ 200, տող 10 եւ վարն ի կարգին։) Կէտադրութիւնն ալ ճշդիւ M ձեռագրին համեմատ պահեցինք։ ‖98 M սխալմամբ

դրուածք է Յակոբայ անուամբ Պատարագին սկզբան մէկ կտորէն. (տես Dan., p. 90, cap. IV.) Ուստի անհիմն չէ ապահովապէս այն կարծիքն թէ "Միածին Որդի„ ժամամուտը յետոյ մուծուած է հոս (նաեւ մեր սովորական Պատարագը), այնու մանաւանդ որ ներմուծողն (կամ ճշդիւ ըսելով Պատարագիս նախնականը նոր բիւզանդական յունարէնէն համեմատ կարգադրողն եւ լրացնողը գտած էր նոյնը քանի մը յոյն օրինակաց մէջ (այսպէս C եւ նաեւ Mor. քիչ մ'եաքը, այսինքն Գ կցորդին ծայրը։) Նոյն ժամամուտին յունարէնն արդէն կայ նաեւ Յակոբայ անուամբ Պատարագին մէջ. (տես Dan., p. 91, cap. VI.) քիչ տարբերութեամբ։ Յունարէնն է՝ Ὁ μονογενὴς Υἱὸς καὶ Λόγος τοῦ Θεοῦ ἀθάνατος ὑπάρχων, καταδεξάμενος διὰ τὴν ἡμετέραν σωτηρίαν σαρκωθῆναι ἐκ τῆς ἁγίας θεοτόκου καὶ ἀειπαρθένου Μαρίας, ἀτρέπτως ἐνανθρωπήσας, σταυρωθείς τε, Χριστὲ ὁ Θεός, θανάτῳ θάνατον πατήσας, εἷς ὢν τῆς ἁγίας Τριάδος, συνδοξαζόμενος τῷ Πατρὶ καὶ τῷ ἁγίῳ Πνεύματι, σῶσον ἡμᾶς, ուստի քիչ տարբեր հայերէնէն (որ սակայն տարբեր տրոհմամբ տեղ

նուն քո զխնդրուածս պարգեւել խոստացար։ Դու եւ այժմ զծառայից քոց զխնդրուածս առ ի յաւգուտն կատարեա, շնորհելով մեզ յայսմ յաւիտենիս զգիտութիւն քում ճշմարտութեանդ, եւ ի հանդերձեալսն զկեանսն յաւիտենականսն պարգեւելով։ — Սար. Ընկալ կեցո եւ պ.։ Զամենասրբուհի։

Քահանայն ի ձայն. Զի բարերար եւ մարդասէր ես Աստուած. եւ քեզ վայելէ փառք, իշխանու.։ — Փոխաձայն. Եկայք ցնծասցուք ի Տէր, աղաղակեսցուք առ Աստուած փրկիչ մեր։

Ելանէ ի խորանէն ի մէջ եկեղեցոյն: Կեցո զմեզ Որդի Աստուծոյ, որ սքանչելիք ես ի վերայ սրբոց քոց, սաղմոսելով քեզ՝ Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։ Մինչեւ ի ՙՆոր է Տոմն ասա: Փառք Հաւր։ Կեցո զմեզ։ Այժմ եւ։ Կեցո զմեզ Որդի Աստուծոյ որ սք.։

## ԱՂԱՒԹՔ ՄՏԻՑ[19]

[Քահ.] Տէր Աստուած մեր, որ կարգեցեր յերկինս դասս եւ զինուորութիւնս հրեշտակաց եւ հրեշտակապետաց ի սպասաւորութիւն փառաց քոց. արա այժմ ընդ մուտս մեր մտանել եւ սրբոց հրեշտակաց. եւ լինել պաշտաւնակից մեզ եւ փառաբանակից քում բարերարութեանդ։ [— Ի ձայն. —] Զի քո է կարողութիւն եւ զաւրութիւն եւ փառք։

---

կը գրէ՝ «մահուամամբ։» ||105 Նաեւ MA «ճշմարտութեանդ.» N «ճշմարտութեան։» ||110 M լուսանցքի վրայ կտոր մ'աւելցնելով այսպէս կ'ուղղէ ամբողջէ՝ «Կեցոյ զմեզ Որդի Աստուծոյ, որ սքանչելիք ես ի վերայ սրբոց քոց, որ յարեար է մեռելոց, սաղմոսելով» եւն։ ||115 «Քահ.» մենք լրացուցինք. այսպիսի զանցառութիւնք կան ուրիշ տեղեր ալ։ ||116 N եւ MA «զկեանսն յաւիտենականսն (N «զկեանս յաւիտենականս») պարգեւելով. — է ձայն (N չունի) Զի բարերար եւ մարդասէր» եւն։ Յաջորդ փոխաձայնքն եւն բոլորովին տարբեր են ի N եւ MA, որ չափազանց երկար խրատագիր մ'ալ կը կցեն. (տես առ. էջ 201—202 եւ վարն ի կարգին։) ||117 Նաեւ MA «Եւ սրբոց հրեշտակաց.» N չունի այս «եւ։» ||119 «Ի ձայն» չունին N եւ MA. վերջաւորութիւնն ալ N այսպէս կ'աւարտէ՝ «...զօրութիւն եւ փառք յաւիտեանս ամէն.» MA «...եւ փառք, այժմ եւ միշտ» եւն։ — Յաջորդ խրատագիրքն տարբեր են ի

տեղ իմաստը փոխուեր է), այսինքն՝ «Միածին Որդի եւ Բանդ Աստուծոյ, անմահ գոլով՝ յանձն առեր... տնանց փոփոխումն մարդ եղեր («անփոփոխելի» եւն) եւն։ Ճիշդ թարգմանութիւն է «մահուամբ զմահ կոխեցեր» համեմատ յունին ասութեան։

18 Ամբողջին համար (Աղօթքը, Քարոզութիւն եւ փոխաձայն) տես վերը՝ էջ 186 եւ Ծան. 18—21։ «Բարոզի» քով կայ նաեւ M ձեռագրի լուսանցագրութիւնը՝ «որ յարեարդ ի մեռելոց» (տես հոս վերը Ձեռագրաց տարբերութիւնք՝ տող 110։) Քարոզութիւնքն եւ փոխաձայնքը՝ քիչ շատ տարբերութեամբք՝ ունին հոս հայոյն պէս նաեւ C եւ Mor. իսկ միւսները ոչ։ B այս ամէն ասու գիւ յետամուտ մասերն ամենեւին չունի։ — Յաջորդ աղօթքէն յառաջ Յ. երկար խրատագիր մ'ունի «փոքր Մուտից» մասին զորոնք հայն եւ անոր նոր խմբագրողը տակաւին չէին գտած իրենց օրինակին մէջ։

19 Տես վերը՝ էջ 186—7 եւ Ծան.22–25։ Իսկ Սարկաւագի Քարոզութիւնքն եւն («Եւ ապա ողջունէ» եւն) հոս եւ Բարոզի քով համառօտ բան մըն են. յունականք չափազանց երկար խրատագրերով ճոխացած են հոս՝ գրեթէ ամբողջ էջ մը Danielի հրատարակութեան (pag. 344։) «Իմաստութեամբ աւաթիւ՝» տես վերն՝ էջ 187, Ծան. 25։ — Աւելորդ է ըսել որ «Սուրբ

Եւ ապա ողջունէ քահանայն զԱւետարանն երկրպագելով երիցս եւ մտանէ ի խորանն: Դպիրն պաշտէ՝ Եկայք երկիր պագցուք նմա։ Կեցո զմեզ Որդի։ Փառք Հօր եւ։ Եւ ըստ աւուրն պատկերի ասի շարական, եւ Եժմ եւ միշտն Աստուածածնի շարական:

Եւ զկնի Սարկաւագն. Խմաստութեամբ աւուրի. սոֆիա։ [Դպ.] Սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ, ողորմեա։

ԱՂԱՒԹՔ ԵՐԵՔՍՐԲԵՆԻ[20]

Գր. — Եւ անդէն առ նմին քահանայն աղաւթէ. Աստուած սուրբ, որ ի սուրբս բնակեալ[21] ես, եւ երեքսրբեան ձայնիւ սերովբէք գովեն զքեզ եւ քերովբէք փառաբանեն. եւ ամենայն երկնային զաւրութիւնքն քեզ երկիր պագանեն. որ ի չգոյէ ի գոյ ածեր զամենայն արարածս.[22] որ արարեր զմարդն ըստ պատկերի քում եւ նմանութեան, եւ ամենայն շնորհիւ քո զարդարեցեր զնա. եւ ուսուցեր խնդրել զիմաստութիւն եւ զգաւնութիւն.[23] եւ ոչ անտես արարեր զմեղուցեալն, այլ եդիր ի վերայ նորա ապաշխարութիւն փրկութեան։ Որ արժանի արարեր զմեզ զնուաստացեալ եւ զանարժան ծառայքս քո եւ ի յայսմ ժամու կալ առաջի փառաց սրբութեան սեղանոյ

---

N եւ MA, բայց "Սուրբ Աստուած" հոն ալ կայ, տես ի կարգին։ ‖[120] M "սոֆիա։" Բիչ մ՚եւսըն ալ՝ "Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա։" Այս "Որ խաչեցար վասն մեր" ծանօթ յաւելուածն ունին նաեւ N եւ MA։

Գր. ‖[129] M հոս "զօրութիւնքն." N եւ MA "զօրութիւնք՝" առանց -ն յօդի։ ‖[132] M "զգաստութիւն." N "զգօնութիւն." MA "զգաստութիւն։" ‖[134] Նաեւ MA "ապաշխարութիւն փրկութեան." N "ապաշխարութիւն [illegible]թեան." բայց լուսանցքի վրայ (տես տպ. էջ 204, Ծան. 1) ուղղուած՝ "փրկութեան։" ‖[135] Միայն N "ծառայս քո" եւն։ ‖[137] N "Եւ զԵրեքսրբեան Աստուած" Երեքսրբենին մէջ յոյն բնագիրը, ինչպէս նաեւ Յակոբայ, Մարկոսի եւն Պատարագները չունին "որ խաչեցար" յաւելուածը, որուն ծագումը յայտնի է Եկեղեցական Պատմութենէն։

Գր. [20] Գեղեցիկ օրինակ մըն է այս աղօթքն թէ ինչպէս հին հայերէն թարգմանութիւնք յետագայ յոյն բնագրին համեմատ կը սրբագրուէին եւ կերպարանափոխ կ՚ըլլային։ Այս տեղէն առնուած տեսանք այս աղօթքն Բարսղի Պատարագին սկիզբն, բայց հնագոյն ձեւով, ճշգիւ Բարսեղեան օրինակին համեմատ. (տես վերը՝ էջ 187—8, եւ Ծան. 26—7։) Իսկ այս տեղ եղածը, որ մեր սովորական Պատարագին մէջ ալ կայ, ճիշդ կը նմանի յունական նոր օրինակաց վերջէն կերպարանափոխուած խմբագրութեան հետ (տես Dan., p. 345, c. XVIII), ըստ այսմ Բարսղի Նախերգանին կցկցողը մեր այժմու խմբագրութենէն հնագոյն եւ աւելի անխառն հայերէն օրինակ մ՚առջեւն ունէր։ Յաջորդովս կը համեմատենք նոր խմբագրութիւնս նոր յունականին հետ։

[21] Յ. "լռւագոյն" ἀναπαυόμενος ("ի սուրբս հանգուցեալ") ինչպէս ունի Բարսղի Նախերգանն ալ։

[22] Յ. ὁ ἐκ τοῦ μὴ ὄντος εἰς τὸ εἶναι παραγαγὼν τὰ σύμπαντα ("որ յոչ լինելոյ ի լինել ածեր զամենայն")։ — Բիչ մ՚եւսը Յ. "ամենայն շնորհաւ քովք" եւն։

[23] Յ. ὁ διδοὺς αἰτοῦντι σοφίαν καὶ σύνεσιν եւն, այսինքն՝ "որ տաս՝ որում խնդրէ՝ զիմաստութիւն եւ զգօնութիւն"... այլ Եգիպ. (կամ "հաստատեցեր") ղադաջխարոնբէն է երէշոնբէն" եւն։

*քո, եւ զաւրհնաւոր[24] երկրպագութիւն եւ զփառաբանութիւն մատուցանել քեզ։ Դու Տէր ընկալ ի բերանոյ մեղաւորացս զերեքսրբեան աւրհնութիւնս. եւ պահեա զմեզ քոյին քաղցրութեամբդ։[25] Թող զամենայն յանցանս մեր՝ զկամայ եւ զակամայ։ Սրբեա զհոգի եւ զմարմինս մեր, եւ շնորհեա ի սրբութեան պաշտել զքեզ զամենայն աւուրս կենաց մերոց, բարեխաւսութեամբ սրբոյ Աստուածածնիդ եւ ամենայն սրբոց, որք յաւիտենից քեզ բարեհաճոյեցան։ — Ի ձայն. — Զի սուրբ ես Տէր Աստուած մեր. եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ,[26] այժմ եւ միշտ եւ յաւիտ.։[27]*

## ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ[28]

Ի. — *Եւ ապա նստի քահանայն, եւ սարկաւագն յոտն կալով ասէ.* Պրոսխումէն։ — *Քահանայն խաչակնքէ ի վերայ ժողովրդեանն եւ ասէ.*

---

օրհնութիւնս" եւն. MA = M։ ‖138 MA՝ ճիշդ ինչպէս նաեւ M "[illegible] քաղցրութեամբդ." N "քոյին քաղցրութեամբ." եւ քիչ մ'եւսքը՝ "զամենայն յանցանս զկամայ" եւն, չունենալով "մեր" ստացականը։ ‖139 Նաեւ MA "զհոգի," N "զհոգիս։" ‖141 MA եւ N "սուրբ Աստուածածնիդ։" ‖142 "Ի ձայն" չունին N եւ MA. նաեւ M լուսանցքի վրայ միայն գրուած ունի։ Վերջաւորութիւնն ալ MA ունի ճիշդ M ձեռագրի պէս, իսկ N այսպէս՝ "Զի սուրբ ես Աստուած մեր, եւ քեզ փառք։"

Ե. ‖145ff Այս ամէն խրատագիրքն եւ մանունք բոլորովին տարբեր են ի

[24] Յ. τὴν ὀφειλομένην σοι προσκύνησιν ("զերկրպագութիւն որ քեզ պարտի.") ուստի "օրհնաւոր" հոս իբրեւ "պարտաւոր" կամ "պարտական" նշանակութեամբ գործածուած է։

[25] Յ. ἐπίσκεψαι ἡμᾶς ἐν τῃ χρηστότητί σου այսինքն "խնամէ (կամ "այցելու լեր") մեզ քաղցրութեամբ քով։" — "Բարեհաճոյացան"՝ տես վերը, էջ 188, ծան. 27։

[26] Յ. "Եւ քեզ փառս մատուցանեմք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ" եւն։ Այսպէս ունի նաեւ Բարսղի Նախերգանը. (վերը՝ էջ 189։)

[27] Հոս բիւզանդեանք կը կցեն քանի մը քարոզութիւնք եւ աղօթքներ, ի մասնաւոր "Աղօթք վերնոյ աթոռոյն" (εὐχὴ τῆς ἄνω καθέδρας,) տես Dan., p. 346. Հայք չունին զասոնք՝ ինչպէս եւ ոչ Բարսղի Նախերգանը։ Բայց B ալ կ'երեւայ ունի գլխաւոր աղօթքը, որ է հետեւեալը՝ "[illegible] (εὐχὴ τῆς καθέδρας τοῦ θυσιαστηρίου.) Տէր Տէր, Աստուած զօրութեանց, փրկեա զժողովուրդ քո, եւ խաղաղացո զօրութեամբ Հոգւոյդ քո սրբոյ, նշանաւ պատուական խաչի քո Միածնի Որդւոյ քո. ընդ որում օրհնեալ ես յաւիտեանս յաւիտենից. ամէն։" Եթէ դուրս չէ ինկած հոս այս փոքր աղօթքը, Պատարագիս Նախնական Հայ Թարգմանութիւնն աւելի հին կ'արտացոլացուի քան նոյն իսկ Բարբերինեանը։

Ե. [28] Յ. այսպէս ունի "[illegible] Պռոսխումէն։ Ի֊ ընթերցողն. Սաղմոս Դաւթի։ Ի֊ [illegible] Սրկ. Իմաստութեամբ։ Ի֊ ընթերցողն [illegible] Առաքելոյն (τὸ προκείμενον եւն)։ Ի֊ [illegible] Սրկ. Պռոսխումէն։ Ի [illegible] Առաքելոյն [illegible]. Խաղաղութիւն ընդ քեզ։ Ի֊ ընթերցողն. Ալէլուիա. Սաղմոս Դաւթի։" Անկէ եսքը կու գայ խրատագիր մը ինկելու սուրբ սեղանին, եւ այլեւայլ աղօթքներ, մին՝ "Աղօթք նախ քան զԱւետարանն" (εὐχὴ πρὸ τοῦ εὐαγγελίου), զոր շատ մը յոյն ձեռագիրք ալ չունին. յետոյ երկար խրատագրեր, քարոզութիւն մը եւ դարձեալ Աղօթք մը, որոնցմէ եսքը Քահանայն կ'ըսէ՝ "իմաստութեամբ ուղղի. լուիցուք սրբոյ աւետարանին։ Ի֊ Սրկ. Ընդ սրբոյ աւետարանիս [illegible] ընթերցուած։ Ի֊ [illegible]. Պռոսխումէն։ Ի֊ [illegible] Խաղաղութիւն ընդ քեզ ընդ աւետարանելոյդ։" Այս ամէնը տես Dan., p. 346—7, c. XIX. — Բարբ. ամբողջ այս մասերն մինչեւ Բազկատարած աղօթքը չունի, ուստի եւ ոչ Քարոզութիւնքը հոս բազկատարածէն յառաջ։

**Խաղաղութիւն ամենեցուն։** — *Ժողով.* **Եւ հոգւոյ քում։** — *Սարկաւագն.* **Խմաստութեամբ։** — *Սաղմոսաղն.* **Սաղմոս ի Դաւիթ։** — *Սարկաւագն.* **Պռաւսխաւմէն։**

*Սաղմոսաղն ասէ զՄեսեդին: — Սարկաւագն.* **Խմաստութեամբ։** — *Ընթերցաւղն.* **Առ Եբրայեցիս։** — *Սարկաւագն.* **Պռաւսխաւմէն։** — *Եւ ապա ընթեռնու զԱռաքեալն:*

*Եւ զկնի Առաքելոյն քահանայն ասէ.* **Խաղաղութիւն ամենեցուն։** — *Ժողո.* **Եւ հոգւոյ քում։** — *Սաղմոսաղն.* **Ալէլուիա։ Սաղմոս ի Դաւիթ։** — *Սարկա.* **Պռաւսխաւմէն։** — *Սաղմոսաղն ասէ զերեքփոխն Ալէլուին եւ զԱլէլուն:*

*Եւ ապա զկնի Սարկաւագն.* **Սոֆիա աւռթի։ Երկիւղածութեամբ լուարուք սրբոյ աւետարանիս։** — *Ընթերցաւղն.* **Ըստ Յովհաննու սրբոյ աւետարանիս ընթերցուած։** — *Ժողո.* **Փառք քեզ Աստուած։** — *Սարկաւագն.* **Պռաւսխաւմէն։** *Եւ ընթեռնու: — Եւ զկնի ժողովուրդն.* **Փառք քեզ Աստուած։** — *Սարկաւագն.* **Խմաստութեամբ աւռթի։**

[29] *Սարկաւագն.* **Ասասցուք ամենքեան՝ Տէր ողորմեա։** — *Ժողով.* **Տէր ողորմեա։** — [*Սար.*] **Յամենայն անձնէ եւ յամենայն մտաց, զՏէր։** [*Ժող.* **Տէր ողորմեա։** — *Սար.*] **Տէր Աստուած հարցն մերոց, աղաչեմք զքեզ, լուր մեզ եւ ողորմեա։** — *Ժողովուրդն.* [**Տէր ողորմեա։**] — [*Սար.*] **Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. աղաչեմք լուր Տէր եւ ողորմեա։** — *Ժողովուրդն բազկատարած Գ՝* **Տէր ողորմեա։**

---

N եւ MA, որ հոս սա տողը միայն ունին՝ "Ի— չօփօրէ ադրեօ Ե— Երեէօբբե—ՆՆ Փ—Նփ—Նոյն." եւ կը կցեն Խաղաղականքն՝ "Ասասցուք" եւն (տես տող 162 եւն։) իսկ Ընթերցուածքն յետոյ կու գան։ ‖[160] L հոս այսպէս ունի՝ "Ի— ըՆԲԵ—Նո—Ն ըԱ—Եփօբ—ՆՆ, Ե— յ—ո—ըփէՆ օյ—ՆԷՆ ըՀ—ո—փ—ՄԷՆ Ժ—ղոփ—ըփՆ՝ օըղէս Ե—ԷլԷ—լ Է Է ղ—փ.։" Հոս կը կցուի ի L Հաւատամքն, որ ըստ տեղեկութեան Հ. Ցովսէփայ Վ. Գաթրճեան՝ "աւելի Կ. Պոլսոյ հանգանակն է, փոքր ինչ խառնեալ մերոյն։" Քանի մը տարբեր ընթերցմունքն են՝ "Հաւատամք ի մի Աստուած ...արարողն ...յառաջ քան զամենայն յաւիտեանս ...ծնեալ եւ ոչ արարած, համագոյակ Հօր ...որոյ սուրբ եւ անմահ թագաւորութեանն ոչ գոյ վախճան" եւն։ Բայց L հոս վարի լուսանցքի վրայ նշանակուած դիտողութիւն մ'ալ ունի թէ՝ "Թ—ղՆ մի ըրՉԷ Ե— Փօրօղէ, ղԷ Խ—լ—փ Է Հ——փ—ՄԷ—Ն ԷՐ—Ժ." այսինքն՝ թող տուր Հաւատամքը, հոս մ'ըսեր, տեղը չէ։ Նոյնպէս կը ծանուցուի Հաւատամքին ծայրը թէ "Սարկաւագն յաւարտել Աւետարանին սկսանի քարոզել, որպէս եւ գրեալ է ի սուրբ Բարսղի Պատարագին. եւ յորժամ յառաջադրի Խորհուրդն ի սուրբ սեղանն եւ կատարի ամենայն խորհրդածութիւնքն, նա յայնժամ ասի Հաւատամքն յիշրում տեղւոջն։" Անկէ ետքը կը կցէ՝ "Սրփ. Ասասցուք" եւն։ ‖[161] M հոս "աւռթի։" ‖[162] N եւ MA "Ասասցուք ամենքեան Փ—Բ—Ն—ԲԷ—Փ" եւն։ ‖[164] Փակագծեալը՝ ինչպէս այլուր՝ չկայ ի M եւ N եւ MA, բայց կ'ենթադրուի. N եւ MA հոս ընդհանրապէս ժողովրդ-

[29] Այս քարոզութիւնքն աւելի ընդարձակ են Բարսղի Նախերգանին մէջ. (տես էջ 189, եւ Ծան. 29—31։) Հոս անց գրուածները նոյն են յունականին հետ, ուստի անշուշտ ըստ այնմ թարգմանուած։

## ԱՂԱՒԹՔ ԲԱԶԿԱՏԱՐԱԾ[30]

*Օ. — Քահանայն ասէ.* Տէր Աստուած մեր, *զբազկատարած զաղաչանս ծառայից քոց վերընկալցիս, եւ ողորմեսցիս ըստ մեծի ողորմութեան քում: Օգնութիւն քո առաքեա ի վերայ մեր եւ ամենայն ժողովրդեանս, որք ակն ունին առ ի քէն առատ ողորմութեանդ:*

*Սարկաւագն.* Եւ *եւս վասն բարեպաշտ եւ աստուածապահ թագաւորաց մերոց կարողութեան եւ յաղթութեան եւ հանապազորդ խաղաղութեան, առողջութեան եւ փրկութեան նոցա:* Եւ *որպէս զի* Տէր Աստուած *մեր առաւել գործակից լինիցի նոցա, եւ առաջնորդեսցէ նոցա յամենայնի, եւ հնազանդեցուսցէ ընդ ոտիւք նոցա զամենայն թշնամի պատերազմող, ասասցուք ամենեքեան՝* Տէր *ողորմեա: — Ժողովուրդն բազկատարած Գ* Տէր *ողորմեա: — Սարկաւագն.* Եւ *եւս աղաչեսցուք զի լուիցէ* Տէր Աստուած *ձայնի աղաչանաց մերոց, եւ ողորմեսցի մեզ. եւ վասն դարձուցանելոյ ի մէնջ զամենայն բարկութիւն եւ զխորհուրդ չար յարուցեալ ի վերայ մեր. եւ խորտակել զաներեւոյթ թշնամին ընդ ոտիւք մերովք. եւ պարգեւել բժշկութիւն հիւանդաց, եւ հանգիստ ննջեցելոց, ասասցուք ամենեքեան՝* Տէր: — *Ժողովուրդն Գ* Տէր *ողորմեա: — [Սար.]* Վասն *ծառային* Աստուծոյ *այս անուան առողջութեան, փրկութեան եւ թողութեան մեղաց, զ*Տէր: — *Ժողո. Գ* Տէր *ողորմեա: — [Սար.]* Վասն *եղբարց մերոց եւ համօրէն առաջի կացեալ ժողովրդեանս, որք եկեալ մտադիւրութեամբ մտին ի տուն* Տեառն *աղաւթակից լինել մեզ, զ*Տէր *աղաչեսցուք:*

---

դեան պատասխանիքը չեն գրած. — N եւ MA "Ամենակալ Աստուած հարցն մերոց՝ զքեզ աղաչեմք" ունին. եւ կը կցեն խաղաղականաց սովորական միւս կտորներն ալ, ուստի "վասն որոյ տաճարիս." "վասն փրկելոյ զմեզ" եւն եւն (տես վարն ի կարգին:)

Զ. ‖169ff Աղօթքն ունին N եւ MA, բայց կից նաեւ փառաբանութիւնը "Զի ողորմած եւ մարդասէր ես եւ քեզ (MA վայելէ) փառք" եւն: Իսկ յաջորդ խաղաղականքն (տող 173—189) հոս չունին MA եւ N, որ նախ երկար խրատագիրներ կը կցեն, յետոյ կու գան Ընթերցուածքն (M տես վերը Հած. Ե) եւ Աւետարանքն եւն: Ընդհանրապէս խօսելով այս տեղէն սկսեալ մինչեւ գրեթէ բուն Սրբասացութիւնն, (Հած. Թ), բոլորովին տարբեր են Լամբրոնեանք (տես N, տպ. էջ 211:) Եւ որովհետեւ Աւետարանքին յաջորդող Քարոզութենէն սկսեալ համեմատած ենք N եւ MA "Աթանասի" Պատարագին հետ, (տես վերը՝ էջ 272 եւն) որուն զարգացման մէկ օղակն է այս "Ոսկեբերանի" պատարագն, ասկէ սկսեալ կրկին չենք համեմատեր հոս N եւ MA ձեռագրաց ընթերցմունքն, բայց միայն՝ ուր Աթանասի քով Աղօթք պակսելով՝ չէինք կրցած հոն համեմատել: Բաց ուստի տես Լամբրոնեան Պատարագն յետոյ իւր

Զ. [31] Բազկատարած Աղօթքս եւ ասոր կից Քարոզութիւնքն տես Բարսղի Նախերգանին մէջ, վերը՝ էջ 189—190 եւ Ծան. 32—35, ուստի հոս չենք համեմատեր: Հոս գրիչն աւելի համառօտած է Քարոզութիւնքն, մէկ երկու կտոր գուցէ թողլով. այսպէս Արքեպիսկոպոսին եւ "յառաջագնացեալ հարց" մասերը: — Յունականը չունի վերջին մասին խրատագիրը "Եւ յայս տանս խաչակնքէ" եւն, եւ ոչ Բարսղի մէջինը:

*Եւ յայս տանս խաչակնքէ քահանայն երիցս ի վերայ ժողովրդեանն. եւ վերաձայնէ.* Զի ողորմած եւ մարդասէր ես, եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ։

### ԱՂԱԻԹՔ ԵՐԱԽԱՅԻՑ[31]

Է. — *Սարկաւագն.* Աղաւթեցէք երախայքդ։ — *Ժողովուրդն.* Տէր ողորմեա։ — *Սարկաւագն.* Եւ հաւատացեալքդ յաղագս երախայիցն աղաչեցէք զՏէր, զի ողորմեսցի նոցա։ — *Ժողովուրդն.* Տէր ողորմեա։ — [*Սար.*] Ուսուսցէ նոցա զբանն ճշմարտութեան։ — *Ժող.* Տէր ողորմեա։ — [*Սար.*] Յայտնեսցէ նոցա զաւետարանն արդարութեան եւ փրկութեան, զՏէր։ — *Ժող.* Տէր ողորմեա։ — [*Սար.*] Ընկալ կեցո եւ ողորմեա եւ պահեա զնոսա։ Որք երախայքդ էք, զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք։

### ԱՂԱԻԹՔ Ի ՎԵՐԱՅ ԵՐԱԽԱՅԻՑՆ

*Քահանայն ասէ.* Տէր Աստուած մեր, որ ի բարձունս բնակեալդ ես, եւ զխոնարհս տեսանես. որ վասն փրկութեան ազգի մարդկան առաքեցեր զՄիածին Որդիդ քո՝ զԱստուած եւ զՏէրդ մեր զՅիսուս Քրիստոս. նայեաց ի վերայ ծառայից քոց երախայիցս, որք խոնարհեցուցին քեզ զպարանոցս իւրեանց. արժանաւորեա զնոսա ժամանակի ուղղութեան լուացման վերստին ծննդեան, թողութեան մեղաց, եւ զգեստու անապականութեան. միաւորեա զնոսա ընդ սուրբ կաթողիկէ, առաքելական եկեղեցի քո, եւ զուգաթուեա ընդ ընտրեալ հաւտս քո։

*Սար.* Ընկալ կեց.։ — *Ժող.* Տէր ողորմեա։ — *Սար.* Զամենասուրբուհի Աստուածածինն։ — *Ժող.* Քեզ Տեառն յանձն։

*Քահանայն ի ձայն.* Զի եւ սոքա ընդ մեզ փառաւորեսցեն զամենապատիւ եւ զմեծվայելուչ անունդ Հաւր եւ Որդ.։

*Սարկաւագն.* Որք երախայք էք, երթայք. [որք] երախայք էք, երթայք. որք երախայք էք, երթայք։ — *Սարկ.* Մի՛ ոք յերախայից, մի՛ ոք ի թերահաւատից, եւ մի՛ ոք յապաշխարողաց եւ յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս։

---

տեղն ի կարգին. ‖189 M գրեր է "Եւ վերաձայնէ։" — Քիչ մ'ետքը "պատիւ" բառն ալ համառօտութեամբ՝ "պտ.։"

Է. ‖200 "Աղաւթք ի վերայ Երախայիցն" խորագիրը կայ ի M, բայց կցուած յաջորդ "Քահանայն ասէ" խորագրին սկիզբը։ ‖206 M "ծնընդեան։" ‖212 M "զմեծավայելուչ։" ‖218 Այս երկրորդ (փակագծեալ) "որք" հարկաւոր

Է. [31] Երախայից Աղօթքն եւ յարակից մասերը՝ տես վերը Բարսղի Նախերգանին մէջ, էջ 191—2, եւ Ծան. 36—42. ուստի հոս կրկին չենք համեմատեր։ "Աղօթք ի վերայ երախայից" խորագրին տեղ B այսպիսի խորագիր մ'ունի՝ *Εὐχὴ τῶν κατηχουμένων πρὸ τῆς ἁγίας ἀναφορᾶς τοῦ Χρυσοστόμου* ("Աղօթք Երախայից նախ քան զսուրբ պատարագն Ոսկեբերանի։")

## ԱՂԱՒԹՔ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ ԱՌԱՋԻՆ

Ը. — [*Սարկ.*] Որք հաւատացեալքդ էք, եւ եւս խաղաղութեան՝ զՏէր։ — *Ժողո.* Տէր ողորմեա։[32]

*Աղաւթք Հաւատացելոց։*[33]

*Քահանայն.* Գոհանամք զքէն Տէր Աստուած զաւրութեանց, որ արժանի արարեր զմեզ յանդիման կալ եւ այժմ սրբոյ սեղանոյ քո, եւ անկանել առաջի գթութեանց քոյ[34] վասն մեղաց մերոց եւ ժողովրդեանս անգիտութեան։ Ընկալ Աստուած զաղաչանս մեր. եւ արժանաւորեա զմեզ յամենայն ժամու[35] մատուցանել քեզ զաղաչանս եւ զպաղատանս եւ զենումն անարիւն յաղագս ամենայն ժողովրդեան քում. եւ բաւականացո զմեզ, զորս եդիր ի սպասաւորութեանս յայսմիկ՝ զաւրութեամբ Հոգւոյդ քում սրբոյ, անամաւթս եւ անդատապարտս եւ մաքուր վկայութեամբ գիտակցութեան քում[36] վերակարդալ զքեզ[37] յամենայն ժամու ի տեղւոջս յայսմիկ.[38] որպէս զի լսելով մեզ՝ հաշտող լինիցիս բազում բարերարութեամբդ քո։[39] — *Սարկ.* Ըն-

---

գերանունը գրուած էր M-ի ընդօրինակութեան մէջ, բայց յետոյ ջնջուած (տես վերը՝ էջ 274։)

Ը. Երկու Աղօթքներս ալ N եւ MA ձեռագրաց մէջ չկան, ինչպէս եւ ոչ “Աթանասի„ քով։ ‖220 M “Աղաւթք Հաւատացելոց Քահանայն. Գոհանամք„ եւն։ Այս աղօթքիս L ձեռագրի ընթերցումն ալ ծանօթ է մեզ, բայց տարբերութիւնք քիչ են։ ‖221 L զօրութեանց։ ‖224 L “Ընկալ Տէր Աստուած„ եւն։ ‖226 M “բաւականացոյ„ ըստ իւր սովորութեան, ինչպէս ուրիշ տեղեր ալ։ ‖237 L “զորս եդիր ի սպասաւորութիւնս յայսմիկ զօրութեամբ...

Ը. [32] Հոս ալ եւս պահուած է Սարկաւագի այս քարոզութիւնը՝ “Որ հաւատացեալքդ„ եւն (= Յ. ὅσοι πιστοί, ἔτι καὶ ἔτι, ἐν εἰρήνῃ τοῦ Κυρίου δεηθῶμεν.) որ Բարսղի Նախերգանին մէջ դուրս ձգուած է։ Յունարէնին մէջ ասի կցուած է “Որք երախայք էք, երթայք„ եւն խօսքին հետ՝ իբրեւ մէկ Քարոզութեան մասը. (տես վերը՝ էջ 192, ծան. 42։)

[33] Ասկէ սկսեալ կը դադրի՝ (մէկ երկուքն ի բաց առեալ, զոր իրենց տեղը կը նշանակենք,) Բարսղի Նախերգանին մէջ ասկէ առնուած մասը։ — Այս աղօթքն է՝ “Աղօթք Հաւատացելոց առաջին„ (Εὐχὴ πιστῶν πρώτη), զկնի սփռելոյ մարմնակալին.„ զոր ունի նոյնպէս B (տես Goar, p. 70, Dan., p. 349, c. XXII, եւն։)

[34] Ճշգիւ յունարէնին համեմատ՝ καὶ προσπεσεῖν τοῖς οἰκτιρμοῖς σου κτλ.

[35] “Յամենայն ժամու„ յունական օրինակներու մէջ չենք գտներ։ — “Ի սպասաւորութիւն„ (= εἰς τὴν διακονίαν), ինչպէս սովորաբար կը թարգմանուի։

[36] Այս “քում„ պէտք է ուղղել ընել “իւրոյ„ եւ թերեւս փոխանակ “գիտակցութեան„ գրել “խղճի մտոյ„ ինչպէս իմաստն ու յունարէնը կը պահանջէ. Յ. ἀκαταγνώστως καὶ ἀπροσκόπτως, ἐν καθαρῷ τῷ μαρτυρίῳ τῆς συνειδήσεως ἡμῶν. (“անամօթս եւ անդատապարտս, մաքուր վկայութեամբ խղճի մտաց մերոց„ կամ “գիտակցութեան մերոյ„ եւն։) Իսկ “Գիտակցութիւն„ բառն, որ մենք այժմ տարբեր իմաստով կը գործածենք յաճախ, միջին դարու մեր եկեղեցական-աստուածաբանական գրութեանց մէջ յաճախ կը գործածուի իբրեւ խղճմտանք, (= Ճշգիւ συνείδησις.) Նոյն բառն ուրիշ կերպով թարգմանուած տես վերն էջ 193, ծան. 62։

[37] “Վերակարդալ զքեզ„ ըստ յունականին ἐπικαλεῖσθαί σε κτλ. Բարսղի Պատարագին վերնոյն շատ նման մէկ աղօթքին մէջ միեւնոյն բառը եւս թարգմանուած է՝ պարզապէս “կարդալ„ (տես՝ էջ 193, ծան. 53։)

[38] Յ. “յամենայն ժամանակի եւ տեղւոջ.„ (ἐν παντὶ καιρῷ καὶ τόπῳ.)

[39] Յ. ἵλεως ἡμῖν εἴης κτλ. (“քաւիչ մեզ լինիցիս„ եւն։)

կալ կեցո եւ պահեա։ — Ժողո. Տէր ողորմեա։[40] — Սարկ. Իմաստութեամբ։ — Քահանայն վերածայնէ. Զի քեզ վայելէ յամենայնի փառք, պատիւ եւ երկրպագութիւն, այժմ եւ։ — Ժողո. Ամէն։

## ԱՂԱՒԹՔ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ ԵՐԿՐՈՐԴ[41]

Քահանայն. Դարձեալ բազում անգամ առաջի քո անկանիմք եւ ի քէն հայցեմք, բարերար եւ մարդասէր. որպէս զի նայելով յաղաչանս մեր՝ մաքրեսցես զհոգիս եւ զմարմինս մեր յամենայն աղտեղութենէ,[42] եւ տացես մեզ անամօթս եւ անդատապարտս[43] կալ առաջի սրբոյ սեղանոյ քո։ Շնորհեա Աստուած եւ աղօթակցաց մերոց յառաջադիմութիւն կենցաղոյ եւ հոգեւորական հանճարոյ.[44] տուր նոցա հանապազ երկեղիւ եւ սիրով պաշտել զքեզ. եւ անամօթս եւ անդատապարտս հաղորդել սրբոց քոց խորհրդոցս, եւ երկնային քո արքայութեանդ արժանաւորել։ — Սարկ. Ընկալ կեցո։ — Ժողո. Տէր ողորմեա։ — Սարկ. Իմաստութեամբ։ — Քահանայն ի ձայն. Որպէս զի ընդ հովանեաւ քո պահպանեալք[45] հանապազ քեզ փառս վերառաքեսցուք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ եւ միշտ։

## ՍՐԲԱՍԱՑՈՒԹԻՒՆ

Թ. — *Ու ասեն զսրբասացութիւնս.*[46] Որք զքերովբէիցն խորհրդաբար կերպարանիմք զխորհուրդ։ Եւ կենդանարար Երրորդութեանն զերեք-

---

անամօթս„ եւն։ ‖229 M "ի տեղոջս." L "ի տեղւոջս։„ ‖230 L "բազում բարերարութեամբդ քո։ Ի յոյն. Զի քեզ վայելէ„ եւն. ուստի չունի Սարկաւագի եւ Ժողովրդեան միջանկեալ մասը (տող 231—2), ինչպէս չունի նաեւ աղօթքիս ծայրը "Ժողո. Ամէն„ բառերը։ ‖241 M "հաղորդել„ եւ քիչ մ'ետքը "արժանաւորել։„

40 Այս "Տէր ողորմեա,„ ինչպէս նաեւ Քահանային վերածայնելէն ետքը գրուած "Ժողո. Ամէն,„ չկան յունարէն օրինակներուն մէջ։ Այսպիսի բոլորովին մանր տարբերութիւններ չենք նշանակեր. մանաւանդ որ այս կարգի մասունց, խրատագրոց եւ նմանեաց մէջ յոյն օրինակներն ալ իրարու հետ շատ քիչ անգամ բոլորովին կը միաբանին, եւ առանք յինքեան ալ մեծ կարեւորութիւն չունին։ Այսպէս յաջորդ աղօթքէն յառաջ յոյն օրինակք կը կցեն՝ "Սրկ. Եւ եւս խաղաղութեան։„ Նմաններ՝ այլուր յաճախ։

41 Յ. εὐχὴ πιστῶν β΄. քանի մ'օրինակք կը յաւելուն "զոր ասէ քահանայն ի ծածուկ." (Goar, p. 71. իսկ Dan., p. 350 չի նշանակեր այս վերջին խրատագրի տարբերութիւնն՝ իբրեւ աննշան։)

42 Յ. "Մաքրեսցես զհոգիս մեր եւ զմարմինս յամենայն աղտեղութենէ մարմնոյ եւ հոգւոյ։„

43 "Անամօթս եւ անդատապարտս„ բառերը քիչ մը վերը (Ծան. 36) գործածուած էին իբր թարգմանութիւն ἀκαταγνώστως καὶ ἀπροσκόπτως բառերու (Goar կը փոխադրէ inculpatè et innoxiè). իսկ հոս իբրեւ ἀνένοχον καὶ ἀκατάκριτον ածականաց ("անմեղ եւ անդատապարտ." նոյնը քիչ մ'ետքն ի Յ. ἀνενόχως καὶ ἀκατακρίτως.) իմաստի նրբութեան տարբերութիւնը մեծ չէ. թերեւս հայ թարգմանչին օրինակին մէջ ալ միեւնոյն բառերն էին երկու տեղն ալ։

44 Յ. προκοπὴν βίου, καὶ πίστεως καὶ συνέσεως πνευματικῆς. ("զյառաջադիմութիւն կենաց եւ հաւատոյ եւ հոգեւոր զգօնութեան,„ կամ "հանճարոյ՝„ ըստ թարգմանչին։)

45 Յ. ὑπὸ τοῦ κράτους σου πάντοτε φυλαττόμενοι ("ընդ իշխանութեամբ քով„ կամ "կարողութեամբ քով„ պահպանեալք եւն։) — "Վերառաքեսցուք„ = ἀναπέμπομεν այս բնագիրներու մէջ արդէն սովորական է։

Թ. 46 Սրբասացութիւնս կամ "Քերովբ-

*սրբեան աւրհնութիւնս մատուցանեմք։ Զամենայն զկենցաղականս ի բաց դնելով զգործ։ Որպէս զի զԹագաւորն ամենեցուն ընդունիցիմք։ Նա զհրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգ. ալէլուիա։*

*Եւ քահանայն հանդերձ ընծայիւքն՝ աղաւթէ.*[47] *Ոչ ոք արժանի է յըմբռնելոցս մարմնաւոր ախտիւք կամ ցանկութեամբ մատչել ի սեղան քո կամ սպասաւորել տէրունական փառաց քոց. զի պաշտել զքեզ մեծ եւ ահաւոր երկնաւոր զաւրութեանց իսկ է։ Սակայն վասն անչափ բարերարութեանդ քո անպարագրելի Բանդ Հաւր եղեր մարդ, եւ քահանայապետ մեր երեւեցար. եւ իբրեւ Տէր ամենեցուն՝ այսմ սպասաւորութեան եւ անարիւն զենման զքահանայութիւն աւանդեցեր մեզ։ Վասն զի դու ես Տէր Աստուած մեր, որ տիրես երկնաւորաց եւ երկրաւորաց, որ ի վերայ քերովբէական աթոռոյ բազմիս, սերովբէից տէր եւ Թագաւոր Իսրայէղի, որ միայն սուրբ ես եւ ի սուրբս հանգուցեալ։ Աղաչեմ զքեզ այժմ, միայն բարերար եւ հեշտալուր. նայեա յիս ի մեղուցեալ եւ յանպիտան ծառայս քո, եւ սրբեա զհոգի եւ զմիտս իմ յամենայն պղծութենէ չարին. եւ բաւականացո զիս զաւրութեամբ սրբոյ Հոգւոյդ, որ զգեցեալս եմ զքահանայականս շնորհ, կալ առաջի սրբոյ սեղանոյս. եւ քահանայագործել զքո անարատ մարմինդ եւ զպատուական*

---

Թ. ‖247 Սրբասացութեան երգս եւ յաջորդ աղօթքն կան նաեւ ի N եւ MA (N տպ. էջ 211 եւն։) — M կը գրէ "ըզքրովբէիցն։" Սրբասացութեանս ալ կիտադրութիւնը պահած ենք ճշդիւ M ձեռագրի համեմատ։ — MA կը շեղի "Որք զոր քրովբէիցն կերպարանեմք զխորհուրդս." N ալ՝ որ կը միաբանի Mի հետ, բայց ունի "զխորհուրդս։" ‖251 Միայն MA "զկարգս." N = M։ ‖252 Այս աղօթքին L ձեռագրի ընթերցմունքն ալ ծանօթ են, որ ընդհանրապէս բաւական տարբերութիւն ունի հոս. իսկ N եւ MA նոյն են Mի հետ։ — L "Ոչ ոք է արժանի" եւն. N եւ MA = M։ ‖253 Նաեւ MA "կամ ցանկութեամբ" եւն. իսկ N "ախտիւք ցանկութեան։" L "աղխտիւք" կը գրէ։ ‖254 N եւ MA "արքունական փառաց քոց" կ'ըսեն. L ամբողջ խօսքը քիչ մ'այլազգ ունի՝ "...մատչել կամ մերձենալ կամ սպասաւորել քեզ Թագաւոր փառաց. քանզի պաշտել զքեզ ... զօրութեանցն իսկ է" եւն։ ‖255 N չունի "երկնաւոր," ունի MA։ ‖256 "Հաւր" չունի հոս MA, ունի N։ — Իսկ L ամբողջ խօսքն այսպէս տարբեր ունի՝ "Սակայն վասն անչափ քո մարդասիրութեանդ անփոփոխելի եւ անայլայլելի եղեր մարդ, եւ քահանայապետ մեր երեւեցար, եւ սպասաւորականիս այսմիկ եւ անարիւն զենման զքահանայութիւն աւանդեցեր մեզ, իբր Տէր ամենայնի։ Զի դու Տէր ես երկնաւորաց ... նստիս (փխ. "բազմիս"), որ սրովբէից ես Տէր եւ Թագաւոր Իսրայէլի" եւն։ ‖261 MA չունի "այժմ." ունի N։ ‖263 Նաեւ MA "եւ զմիտս իմ." N "հոգի եւ զմարմին իմ" եւն։ — Իսկ L ամբողջ խօսքն այլազգ ունի՝ "Զքեզ աղաչեմ զմիայն բարերարդ եւ զհեշտալուրդ. նայեա յիս ի մեղաւոր եւ յանպիտան ծառայս քո, եւ կարողացո (M "բաւականացոյ") զիս զօրութեամբ սուրբ Հոգւոյդ" եւն։ ‖264 MA ճշդիւ Mի համեմատ, իսկ N "որ զգեցեալ եմ զքա-

բէական երգս" ասկէ առեալ յետոյ մուծուած տեսանք նաեւ Բարսղի Նախերգանքին մէջ՝ իր ամէն տարբերութիւններովը յունարէնէն. տես վերը՝ էջ 103—194 եւ Ծան. 55։

[47] Երկար աղօթքս յունարէնին հետ համեմատուած տես նոյնպէս վերը՝ էջ 194—5 եւ Ծան. 56—65. ուստի նոյն համեմատութիւնքն հոս չենք կրկներ։ L ձեռագրի մեծ տարբերութիւնք ալ հայերէնի առաւելութեանց կերպին կը հային քան յունարէնին տուած իմաստին։

արիւնդ։ Քեզ խոնարհեցուցեալ զպարանոցս իմ եւ մաղթեմ, մի մերժեր զիս, եւ մի դարձուցաներ զերեսս քո յինէն. այլ արժանի արա մատուցանել քեզ զընծայս զայս յինէն ի մեղուցեալ եւ յանպիտան ծառայէս քումմէ. վասն զի դու ես որ մատուցանես եւ մատչիս, ընդունիս եւ տաս, Քրիստոս Աստուած մեր։ Եւ քեզ փառս վերառաքեմք հանդերձ անսկիզբն քո Հօրդ եւ ամենասուրբ Հոգւովդ այժմ։

[48]*Ու ընծայքն վերաբերին ի սեղանն. եւ քահանայն լուանայ զձեռսն ասելով.* Լուացայց սրբութեամբ զձեռս իմ։

*Սարկաւագն քարոզէ.* Կատարեսցուք զաղաչանս մեր Տեառն, զՏէր աղաչեսցուք։ — *Ժողո.* Տէր ողորմեա։ — [*Սար.*] Որպէս զի լի են երկինք եւ երկիր փառաւք նորա, զՏէր աղաչ.։ — Վասն առաջադրեալ պատուական ընծայիցս Տեառն Աստուծոյ մերոյ, զՏէր աղաչ.։ — Վասն սուրբ տանս այսորիկ, եւ որք հաւատով եւ երկեղիւ մտանեն ի սմա, զՏէր աղաչ.։ — Վասն փրկելոյ զմեզ յամենայն նեղութենէ, ի բարկութենէ եւ ի վտանգէ, զՏէր աղաչ.։ — *Ժողո.* Տէր ողորմեա։

## Բ. ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

### ԱՂԱՒԹՔ ՅԱՌԱՋԲԵՐՈՒԹԵԱՆ

Ժ. — *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.*[49] Տէր Աստուած ամենակալ, որ միայն սուրբ ես եւ ընդունիս պատարագ աւրհնութեան յայնցանէ՝ որ

հանայական շնորհ” ունի։ ‖265 L “սրբոյ այսմ քո սեղանոյ։” ‖267 M “մի դարձուցանել զերեսս քո” ունի։ — L ամբողջ խօսքը տարբեր՝ “Քանզի քեզ խոնարհեցուցանեմ զպարանոցս իմ եւ մաղթեմ ի քէն՝ մի դարձուցաներ զերեսս քո յինէն եւ մի մերժեր զիս ի ծառայից քոց. այլ արժանացո մատուցանել քեզ զընծայս յինէն ի մեղաւոր եւ յանարժան ծառայէս քումմէ” ունի։ ‖268 “Յինէն” չունի N. (ունի MA ալ) եւ “յանպիտան” կ'ըսէ փխ. “յանարժան”, ինչպէս ունին M եւ MA։ ‖269 M, N եւ MA “եւ ընդունիս եւ տաս” ունին։ ‖270 N “եւ քեզ փառք” ունի. (M եւ MA “փառս” ուղղութեամբ)։ L նաեւ այս վերջաւորութիւնն այլազգ ունի՝ “Քեզ փառս մատուցանեմք եւ անսկիզբն Հօրդ եւ ամենասուրբ եւ բարերար եւ կենդանարար Հոգւովդ այժմ” ունի։ ‖274եւն Այս մասերն եւ քարոզութիւնքն այլազգ են հոս ի N եւ MA (տես N, տպ.

[48] Այս կարճ խրատագրին տեղ, ինչպէս նաեւ մինչեւ այս Թ. հատածիս ծայրը գրուած քարոզութեանց տեղ՝ յունական օրինակները երկար խրատագիրներ ունին խնկարկութեանց սեղանին եւ ընծայից (մասամբ նման այն ամէնուն՝ որ այժմ մեր սովորական պատարագին մէջ ալ կ'ըլլայ,) տաղք եւն եւն. տես Dan., p. 351—4, c. XXIV եւ XXV. Հայն այս ամէնը գտած չէ, բայց ի վերը գրուած համառօտ քարոզութենէն, որ նոյնութեամբ ալ գրուած է Բարսղի Նախերգանին ծայրը. (տես էջ 195 եւ Ծան. 66—7.) եւ որ կը գտնուի յունականին մէջ Իե հատածին ծայրը։ Ասոնց մէջ “Որպէս զի լի են երկինք” եւն տունը հայոյն յատուկ է։

Ժ. [49] Յ. “Աղօթք Յառաջբերութեան (εὐχὴ προσκομιδῆς) զկնի դնելոյ աստուածային ընծայից ի սուրբ սեղանն։” B վերնագրիս մէջ Ոսկեբերանի անունն ալ կ'աւելցնէ՝ “Աղօթք Յառաջբերութեան Ս. Յովհ. Ոսկեբերանի, զկնի դնելոյ սրբոյ ընծայիցն ի սեղանն եւ կատարելոյ ժողովրդեան զխորհրդական երգն։” — Աղօթքը ճիշդ նոյն է յունարէնին հետ։

կալցուն առ քեզ բոլորով սրտիւ։ Ընկալ եւ զմեր մեղաւորացս զաղաչանս, եւ մատո ի սրբութեան քո սեղանդ։ Եւ բաւականացո զմեզ մատուցանել քեզ զընծայս եւ զպատարագս հոգեւորս վասն մեղաց մերոց եւ ժողովրդեանս անգիտութեան։ Եւ արժանաւորեա զմեզ գտանել շնորհս առաջի քո։ Որպէս զի եղիցի ընդունելի պատարագս մեր՝ բնակելով բարերար Հոգւոյ շնորհաց քոց առաջի եղեալ ընծայս † յայս եւ ի մեզ † եւ յամենայն ժողովուրդս † քո։

[50]Սարկ. Ընկալ կեցո եւ։ — Ժողո. Տէր ողորմեա։ — [Սար.] Զժամ պատարագիս եւ զառաջիկայ աւուրս խաղաղութեամբ եւ առանց մեղաց կատարել,[51] ի Տեառնէ խնդ[րեսցուք։] — Ժողո. Շնորհեա Տէր, կամ Սի Կիրիէ։[52] — [Սար.] Զհրեշտակ խաղաղութեան հաւատարիմ պահապան անձանց[53] մերոց ի Տեառնէ խնդ.։ — Զքաւութիւն եւ զթողութիւն յանցանաց[54] մերոց ի Տեառնէ խնդ.։ — Զսրբոյ խաչին ամենայաղթ զաւրութիւն յաւգնութիւն անձանց մերոց, ի Տեառնէ։ — Զբարին եւ զաւգտակարն անձանց մերոց եւ զխաղաղութիւն աշխարհի, ի Տեառնէ։ — Զմնացուածս ժամանակաց մերոց, խաղաղութեամբ[55] կատարել, ի Տեառնէ։ — Զքրիստոնէական կատարումն կենաց մերոց անվիշտս եւ անամօթս, եւ բարի պատասխանատուութեամբ կալ առաջի ահեղ բեմին, ի Տեառնէ։ — Զամենասրբուհի Աստուածածինն, զաւրհ.։

---

էջ 212, եւ վերը՝ էջ 274։) Նաեւ L բոլորովին տարբեր է՝ նախընթաց աղօթքին կցելով՝ "Եւ ընծայեն վերաբերէին ի սեղանն սուրբ։ Սարկ. ի բեմանն ասէ. Թագաւոր երկնաւոր։ Եւ որք ի դասուն խորանին են՝ ասեն. Համբարձէք իշխանք զդրունս ձեր։ Եւ որք ի խորան են՝ Ո՞վ է սա թագաւոր փառաց։ Սրկ. Սա ինքն է թագաւոր փառաց։ Օրհնեալ որ գայ յանուն Տեառն։" ‖[278] M գրած է "վասն սուրբ տանս այսմիկ" եւն։

Ժ. N եւ MA չունին հոս ամբողջ այս հատուածն, այլ "Տէր Աստուած զօրութեանց" եւն (տես վերն էջ 275 եւն։) ‖[286] M "մատոյ… բաւականացոյ" եւն։ ‖[289] M բուն գրած է՝ "բնակելով բարերար Հոգւոյ շնորհաց քոց" եւն։ ‖[294] M գրած է բուն՝ "Սի Կիրիէ." ‖[302] M բուն "պատասխանատուութեամբ։"

[50] Այս խաղաղականք ասկէ առնուած մուծուած են բուն Բարսղի Պատարագամատոյցին մէջ. (տես վերն՝ էջ 197, եւ Ծան. 80—82։) Յունարէնէն հայոյն ունեցած տարբերութիւնները յաջորդով կը նշանակենք։ Հայոյն աւելի նման է Goarի հրատարակածը (p. 74)։

[51] "Զժամ պատարագիս" չունի Յ. իսկ "կատարել" բառ յունին ըլլալու է "կատարեալ," այսպէս՝ "Զաւրս ամենայն կատարեալ, սուրբ, խաղաղական եւ առանց մեղաց, ի Տեառնէ խնդրեսցուք։"

[52] "Սի Կիրիէ." յունարէնն է հոս "Պարասխու Կիրիէ" (παράσχου Κύριε, "շնորհեա Տէր.") մինչդ հայերէնին պէս "Սի Կիրիէ" = σοί, Κύριε, կայ Պատարագիս վերջը (տես վարը Ծան. 183։) Հաւանօրէն յետամնաց են յունաձեւութիւնքս, ինչպէս այս կարգի յունականք յաճախադէպ են շատ աւելի ուշ եղած թարգմանութեանց մէջ, օր. աղագաւ՝ Նախասրբելոց Պատարագին եւն. (տես վարը։)

[53] Յ՝ "հաւատարիմ առաջնորդ, պահապան հոգւոց եւ մարմնոց մերոց" (πιστὸν ὁδηγόν, φύλακα τῶν ψυχῶν καὶ τῶν σωμάτων, եւն։)

[54] Յ. "մեղաց եւ յանցանաց մերոց" (τῶν ἁμαρτιῶν καὶ τῶν πλημμελημάτων եւն։) — Յաջորդ տունը՝ "Զսրբոյ խաչին" եւն՝ չենք գտներ հոս յոյն օրինակաց մէջ։

[55] Յ. "խաղաղութեամբ եւ ապաշխարութեամբ

*Քահանայն ի ձայն.* Վասն գթութեանց Միածնի որդւոյ քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում աւրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ ամենասուրբ եւ բարերար[56] Հոգւովդ քո, այժմ եւ։ — Խաղաղութիւն ամենեցուն։[57] — *Ժողո.* Եւ հոգւոյ քում։

ԺԸ.[58] — *Սարկ.* Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան։ *Եւ ողջունեն զսեղանն եւ զինքեանս:*

*Սարկ.* Զդրունս, զդրունս։ Պռաւսխաւմէն։

*[Ժողովուրդն ասէ.]* Հաւատամք ի մի Աստուած Հայր ամեն.։ *Ի բուն ասի:*

*Սարկաւագն ի յամբոնն վերաձայնէ եւ վերացուցանէ զլայնափորոնն եւ ասէ.* Կացցուք բարւոք. կացցուք երկիւղիւ։ Պռաւսխաւմէն ի սուրբ վերաբերութիւնս խաղաղութեամբ մատուցանել։ — *Ժողո.* Ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ աւրհնութեան։

*[Քահ.] ի ձայն.* — Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ սէրն Աստուծոյ Հաւր, եւ հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ, եղիցի ընդ ձեզ † ամենեսեան։ — *Ժողո.* Եւ ընդ հոգւոյդ քում։

*Սար.* Ի վեր ընծայեցուցէք զսիրտս ձեր։ — *Ժողո.* Ունիմք առ քեզ Տէր ամենակալ։ — *Սար.* Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ։ — *Ժողո.* Արժան եւ իրաւ։

### ՆԱԽԵՐԳԱՆ

ԺԹ. — *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.*[59] Արժան եւ իրաւ զքեզ աւրհնել, զքեզ գովել, զքեզ բարեբանել, զքեն գոհանալ, քեզ երկիր պա-

ԺԱ. Թէ այս մասերն ինչպէս են ի N եւ MA՝ տես վերն, էջ 276—8 եւ ի կարգին։ ‖311 Հոս անհրաժեշտ էր յաւելուլ "Ժողովուրդն ասէ" խրատագիրն, ինչպէս կը վկայէ L այլ, որ ունի՝ "Եւ ժողովուրդն ասասնէն զհաւատը Նիկիականն [illegible] (— տես վերը Ծան. ի տողն 160 եւն. —) Հաւատամք ի մի Աստուած." (Ներգործաբար չի դրուիր հոս ամբողջ Հաւատամքը։) ‖316 "Ի ձայն" լուսանցքի վրայ գրուած ունի M։ ‖320 M բուն "Առ քեզ Տէրն ամենակալ։"

կատարել" եւն (ἐν εἰρήνῃ καὶ μετανοίᾳ, եւն։) — — Յաջորդ տան մէջ՝ Ց. "... [illegible] եւ [illegible]" եւն։

[56] "Բարերար." տես վերը՝ էջ 197, Ծան. 81։

[57] Այս "Խաղաղութիւն ամենեցուն" ունին յունականք ալ, իսկ ժողովրդեան պատասխանը՝ ոչ, կամ չի նշանակուիր։

ԺԱ. [58] "Ողջոյն տուք" մասը սովորական յունականաց մէջ աւելի ճոխացած է։ Հայոյն հետ նոյն է Բարբերինեանն ինչպէս հոս՝ նոյնպէս Բարսղի Պատարագին մէջ. (տես վերը՝ էջ 197, Ծան. 83) ուր սովորական յունականաց ընթերցուածն ալ լիովին դրած ենք համեմատութեան մէջ։ Նոյնպէս համեմատուած են հոն "Կացցուք բարւոք"էն սկսեալ մինչեւ հատածիս վերջը (տես էջ 198, Ծան. 84—87.) Նշանաւոր է ի մասնաւորի "Պռօսխօմէն ի սուրբ վերաբերութիւնս խաղաղութեամբ մատուցանել" անյաջող թարգմանութիւնը (տես՝ անդ, Ծան. 84։) Այս ամէն մասերուն մէջ շատ պէսպիսութիւն ունին յոյն օրինակները, մանաւանդ Mor. որ աւելի համառօտ է՝ այլեւայլ մասեր դուրս ձգելով։ — "Շնորհք Տեառն մերոյ" եւն աղօթքէն յառաջ Dan. (p. 356, c. XXVIII) երկար խրատագիր մ'ունի, ուր ի միջի այլոց կը սահմանուի որ Սարկաւագն քեմէ ելլելով եւ առնելով փչոց (καὶ λαβὼν ῥιπίδιον) հովահարէ ընծայից վրայ (ῥιπίζει τὰ ἅγια.)

[59] Ց. պարզապէս՝ "Եւ քհ. աղօթէ." իսկ Բարբերինեան՝ "Եւ [illegible] Պ—

*զանել ընդ ամենայն տեղիս տէրութեանդ քո: Վասն զի դու ես Աստուած անճառելի, անիմանալի, անտեսանելի. որ եսդ եւ միշտ ես,[60] դու եւ Միածինդ եւ Հոգիդ քո սուրբ: Դու յոչէից ի յէութիւն զմեզ ածեր. եւ զգլորեալքս վերստին կանգնեցեր. եւ ոչ ի բաց կացեր առ ի զամենայն ինչ առնելոյ՝ մինչեւ յերկինս զմեզ վերածեր, եւ զպատրաստեալ արքայութիւնդ շնորհեցեր:[61] Վասն այսր ամենայնի գոհանամք զքէն եւ զՄիածնէ Որդւոյ քո եւ զՀոգւոյդ քո սրբոյ, յաղագս իմանալեաց եւ անիմանալեաց,[62] յայտնի եւ անյայտ բարերարութեանց եղելոց ի մեզ:*

*Գոհանամք զքէն վասն պաշտամանս այսորիկ զոր ի ձեռաց մերոց ընդունել արժանաւորեցեր: Քեզ[63] առաջի կան հազարք հազարաց հրեշտակապետաց եւ բեւրք բեւրուց հրեշտակաց, քերովբէք եւ սերովբէք վեցթեւեանք, բազմաչեայք սաւառնեալ թեւաւք. — ի ձայն. — զյաղթական աւրհնութիւնս երգելով, գոչելով, աղաղակելով եւ ասելով:*

*Ժողո.[64] Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զաւրութեանց, լի են երկինք եւ երկիր փառաւք քո. աւրհնութիւն ի բարձունս. աւրհնեալ որ եկիր եւ գալոց ես անուամբ Տեառն. ովսաննայ ի բարձունս:*

## ԿԱՆՈՆ

ԺԳ. — *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.[65] Ընդ այնոսիկ երանելի զաւրութեանցն եւ մեք, մարդասէր Տէր, գոչեմք եւ ասեմք. Սուրբ ես եւ*

---

ԺԲ. *Այս “Նախերգան„ աղօթքը չունին* N *եւ* MA, *այլ ուրիշ մը. (տես վերն՝ էջ* 278—80, *եւ վարն ի կարգին:)* ‖336 *“Ի յայն„ խորագիրը լուսանցքի վրայ ունի* M:

ԺԳ. N *եւ* MA *կանոնը տարբեր ունին. (տես վերն՝ էջ* 280 *եւն, եւ ի տեղւոջն:)„ Աղօթքն ճիշդ նոյն է յունարէնին հետ, քանի մը մանր տարբերութեամբք. այսպէս “անճառելի„ բառին կը կցէ Յ. ուրիշ ածական մ'ալ՝ “անհասանելի:„*

[60] *Աղաւաղ է հայերէն բնագիրը. բունն ըլլալու է՝ “որ էոտ Գէտ՝ որպէս եւ էող, դու եւ միածին քո Որդի„ եւն* (ἀεὶ ὤν, ὡσαύτως ὤν, *եւն:*)

[61] *Այսինքն՝ “...մինչեւ յերկինս զմեզ վերածեցեր* (ἕως ἡμᾶς εἰς τὸν οὐρανὸν ἀνήγαγες, *“վերածել„ = ճշգրիւ* ἀνάγω), *եւ շնորհեցեր զհանդերձեալ արքայութիւնդ.„* (τὴν βασιλείαν σου ἐχαρίσω τὴν μέλλουσαν.)

[62] Յ. *“Վասն ամենայնի՝ զոր գիտեմք եւ զոր ոչ գիտեմք„* (ὑπὲρ πάντων, ὧν ἴσμεν καὶ ὧν οὐκ ἴσμεν). *այս իմաստով է անշուշտ հայոյն “յաղագս իմանալեաց եւ անիմանալեաց„ բառը:*

[63] *Յոյնին բառն այն է թէ արժանի համարեցար մեր պաշտաւնն ընդունիլ, “Բերդէք եւ քեզ առաջի կան հազարք„ եւն* (καίτοι σοι παρεστήκασι κτλ.) *իսկ “[illegible]„ առաւթեան տեղ յունականք կ'ըսեն՝ “վեցթեւեանք, բազմաչեայք, բարձրացեալք, թռուցեալք„* (μετάρσια, πτερωτά, Goar *կը թարգմանէ՝* sublimes et alti.)

[64] *Հոս՝ ինչպէս գրեթէ ամէն տեղ՝ սովորական յունականք միշտ “Դասն„* (ὁ χορὸς) *կամ Դպիրք խորագիրը կը դնեն. Բարբերինեանն հայոյն պէս՝* ὁ λαός (*Ժողովուրդն:*)

[65] *Սովորական յունականք այս խորագրէն յառաջ բաւական երկար խրատագիր մ'ունին, ուր կրկին կը սահմանուի քշոց գործածել, կցելով թէ՝ “եթէ ոչ իցէ քշոց, ընդ առնէ ծածկոյթիւ„* (εἰ δὲ οὐκ ἔστι ῥιπίδιον, ποιεῖ τοῦτο μετὰ καλύμματος.) *Բարբերինեանք չունի այս ամէնը հայոյն հետ: Յետոյ աղօթքին սկիզբը կ'ըսեն ամէնքը՝ “Եւ քհ. աղօթէ ի ծածուկ:„*

ամենասուրբ, դու եւ միածին քո Որդիդ եւ Հոգիդ քո սուրբ։ Սուրբ ես եւ ամենասուրբ եւ մեծվայելուչ փառք քո։ Որ զաշխարհս այնքան սիրեցեր, զի եւ զմիածին Որդիդ քո ետուր ի մահ.[66] զի ամենայն որ հաւատասցէ ի նա՝ մի կորիցէ, այլ ընկալցի զկեանս յաւիտենականս. որ եկն, եւ զամենայն որ յաղագս մեր տնաւրէնութիւն՝ կատարեաց.[67] եւ ի գիշերին յորում մատնէր զինքն վասն կենաց աշխարհի, առեալ հաց ի սուրբ, յանբիծ եւ յանարատ ի ձեռս իւր, գոհացաւ, աւրհնեաց, սրբեաց, եբեկ եւ ետ իւրոց սրբոց աշակերտացն եւ ասէր.[68]

ԺԴ. — (Քահ.) Առէք կերայք, այս է մարմին իմ, որ վասն ձեր բեկեալ, ի թողութիւն մեղաց։ — Ժողո. Ամէն։[69]

(Քահ.) Նոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեացն առ[70] ասելով. — ի ձայն. — Արբէք ի սմանէ ամենեքեան. այս է արիւն իմ նորոյ ուխտի, որ վասն ձեր եւ բազմաց հեղու ի թողութիւն մեղաց։ — Ժողո. Ամէն։

ԺԵ. — Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.[71] Յիշելով եւ մեք այժմ զփրկական պատուիրանս զայս եւ զամենայնն որ վասն մեր եղեալ, զխաչն, զթաղումն, զերեքաւրեայ յարութիւնն, զյերկինս վերանալն, զընդ աջմէ քո նստելն, զերկրորդ փառաւորեալ եւ զմիւսանգամ նորա գալուստն. — ի ձայն. — Զքոյս ի քոյոց քեզ մատուցանեմք ըստ ամենայնի եւ յաղագս ամենեցուն։

Ժողո. Զքեզ աւրհնեմք, զքեզ գովեմք, զքեզ բարեբանեմք,[72] զքեն գոհանամք Տէր, եւ աղաչեմք զքեզ Աստուած մեր։

ԺԶ. — Քահանայն. Եւս մատուցանեմք քեզ զբանաւոր եւ զանարիւն պաշտաւնս զայս, եւ աղաչեմք, եւ մաղթեմք, եւ պաղատիմք. առաքեա

---

կարգին։) ||345—6 M այսպէս գրած է՝ "...այնքան սիրեցեր որ եւ զմիածին Որդիդ քո ետուր„ եւն։ ||348 M" որ յաղագս մեր տնաւրէնութիւնն։„

ԺԴ. ||254 "Ի ձայն„ լուսանցքի վրայ ունի M։

ԺԵ. N եւ MA տես էջ 283 եւ ի կարգին։ ||359 M այսպէս գրած է՝ "Զերեքաւրեա յարութիւնն, զերկինս (փխ. "զ՚յերկինս...„) վերանալն„ եւն։ ||360 M լուսանցքի վրայ միայն՝ "ի ձայն։„

[66] Այս անկապ "ի մահ„ կտուած մը չունի յունարէն բնագրէն. ամբողջ խօսքը ընդհանրապէս առնուած Յովհանէն ըլլալու չէ, մանաւանդ երբ ձեռագրերն ընթերցումը ճիշդ պահենք՝ "այնքան սիրեցեր որ եւ զմիածին„ եւն։

[67] Յ. "եւ զամենայն որ յաղագս մեր տնաւրէնութիւն՝ կատարեաց է ...՝ յորում մատնէր. ... հանդերձեալ էր մատնել զինքն վասն կենաց աշխարհի„ եւն։

[68] Յ. "...սրբոց աշակերտացն եւ առաքելոցն՝ ասելով„ եւն։

ԺԴ. [69] Սովորական օրինակները հոս քանի մը տող խրատագիր կը կցեն, զոր չունի հայոյն հետ նաեւ Բարբերինեանը։

[70] Այս "առ„ բառը չունին հոս յունականք (ὁμοίως καὶ τὸ ποτήριον μετὰ τὸ δειπνῆσαι, λέγων.) Բարսղի Պատարագի նոր թարգմանութեան մէջ կայ ճշգիւ այս տեղւոյ պէս, բայց նոյն տեղւոյ բնագրէն քանի մը բառ դուրս թողլով. (տես վերը՝ էջ 204, ծան. 129։)

ԺԵ. [71] Յ. "Եւ քհ. աղաւթէ ի ծածուկ։„ Կից Աղօթքը բոլորովին համեմատ է յունարէնին հետ։

[72] "Զքեզ բարեբանեմք„ չկայ յունարէնին մէջ։

[73] Յ. ἐπὶ τὰ προκείμενα δῶρα ("յառաջի եդեալ ընծայս„ եւն։) "Յառաջադրեալս„ արդէն սովորական սաստութիւն է այս կարգի բնագրաց։

*զՀոգիդ քո սուրբ ի մեզ † եւ յառաջադրեալ յընծայս[73] † յայս: Երիցս անգամ կնքէ ասելով.[74]* Եւ արա զհացս † զայս պատուական մարմին Քրիստոսի քո: *Սար. ցած.[75]* Ամէն: — [*Քահ.*] Եւ զբաժակս † զայս պատուական արիւն Քրիստոսի քո: *Սար. ցած.* Ամէն: — *Քահ.* փոխարկելով Հոգւովդ քո սրբով:

*Ու ողջունեն զսեղանն: Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.[76]* Որպէս զի եղիցի սա որոց հաղորդին ի լուացումն[77] ոգւոց, ի թողութիւն մեղաց, ի հաղորդութիւն Հոգւոյդ քո սրբոյ, ի լրումն արքայութեանդ երկնից, ի համարձակութիւնս առ քեզ, եւ մի ի դատաստան կամ ի դատապարտութիւն: Եւս մատուցանեմք քեզ զբանաւոր պաշտաւնս զայս վասն հաւատով հանգուցելոց, նախահարց եւ հարց, հայրապետաց, մարգարէից, առաքելոց, քարոզչաց, աւետարանչաց, վկայից, խոստովանողաց, ճգնաւորաց եւ ամենայն անձանց հաւատով կատարելոց: — *Ի ձայն.* Առաւել զամենասրբուհին, զանարատն, զամենաւրհնեալ տիրուհին մեր զԱստուածածինն եւ զմիշտ կոյսն Մարիամ:

## Յ Ի Շ Ա Տ Ա Կ Ք

ԺԷ. — *Սարկաւագն խունկ մատուցանէ:[78] Քահանայն խոնարհի[79] եւ աղաւթէ.* Սուրբ զերկնային զաւրութիւնսն, զսուրբ մարգարէն Յովհաննէս

---

ԺԶ. N եւ MA տես էջ 285 եւ ի կարգին: ‖[368] L այսպէս ունի կոչումն՝ "Եւ արա զհացս զայս պատուական մարմին Քրիստոսի քո: Սրկ. Ամէն: ՔՀ. Եւ զբաժակս զայս պատուական արիւն Քրիստոսի քո: Փոխարկելով Հոգւովդ քո սրբով: Ի ծածուկ ՔՀ. աղօթէ. Որպէս զի եղիցի" եւն: ‖[379] M լուսանցքի վրայ ունի "ի ձայն:"

ԺԶ. [74] Այս խորհրդագրէն յառաջ աւելի քան 10 տող խորհրդագիր եւ հրահանգ ունին սովորական յոյն բնագիրքն (տես Dan., p. 359—60), որոնք կը պակսին ինչպէս հայոյն՝ նոյնպէս Բարբերինեան օրինակին մէջ: Հայոյն միակ խորագիրը կայ յունականաց քով ալ՝ καὶ ὁ ἱερεὺς ἀνιστάμενος σφραγίζει τρὶς τὰ ἅγια δῶρα, λέγων եւն:

[75] "Ցած" յաւելուածոյ խորհրդագիրն ոչ հոս եւ ոչ քիչ մ'եարը կայ յունականաց մէջ, որոնք այս տեղ կը սահմանեն ըսել սարկաւագին՝ "Օրհնեա, Տէր, զսուրբ բաժակն" եւ երկրորդ տեղը՝ "Օրհնեա, Տէր, զերկուսին:" Բարբերինեանն այս ամէնը չունի, եւ կոչման աղօթքս քիչ մ'ուրիշ ձեւով կ'աւանդէ, այսպէս՝ "Եւ (ՔՀ.) կնքելով երիցս ասել. Եւ արա զհացս զայս պատուական մարմին Քրիստոսի քո, փոխարկելով Հոգւովդ քով սրբով: Ամէն: Եւ զոր ի բաժակիս յայսմիկ՝ պատուական արիւն Քրիստոսի քո, փոխարկելով Հոգւովդ քով սրբով: Ամէն:"

[76] Աստ տեղ B պարզապէս՝ "ՔՀ. է ծածուկ." իսկ միւս յունականք կը սահմանեն հոս ըսել Սարկաւագին "Յիշեա զիս զմեղաւորս, Տէր սուրբ," եւ քշոցով հովհարել:

[77] Ուստի՞ ծագած է այս "ի լուացումն ոգւոց" թարգմանութիւնը, մինչ յունարէնն է՝ εἰς νῆψιν ψυχῆς ("ի զգաստութիւն հոգւոյ.") Անշուշտ է որ դիւրաւ կրնային շփոթել յունարէն νήφω (Աորիստ νήψω, զգաստանալ) եւ νήχομαι (Աոր. νήξομαι, լողալ, νηχεῖον աւազան, եւն) բառերը: Բայց կարելի է նաեւ որ ուրիշ ընթերցուած ունեցած ըլլար հայն իւր յոյն օրինակին մէջ, թէեւ ոչ Goar եւ ոչ Daniel հոս կարեւոր տարբերութիւն մը չեն նշանակեր ընթերցուածոյ:

ԺԷ. [78] Խունկ մատուցանելու խորհրդագիր մը հոս չունին յունականք. այլ քիչ մը վերը՝ "անձանց հաւատով կատարելոց" խօսքէն ետքը, կցելով թէ "Եւ յիշէ (սարկաւագն)՝ զորս կամի՝ ի կենդանեաց եւ մեռելոց:" Իսկ այստեղ Դասը կամ ժողովուրդը կ'ըսէ՝ "Արժան է եւ իրաւ

զյառաջընթաց կարապետն եւ զմկրտիչն, սուրբ զամենագովելի առաքեալսն, սուրբ զայս անուն, զորոյ զյիշատակն կատարեմք այսաւր, եւ զամենայն սուրբս քո յիշելով, աղաչանաւք նոցա այց արա մեզ Աստուած, եւ յիշեա զամենայն ննջեցեալսն մեր յուսով յարութեան կենացն յաւիտենից։[80]

Յիշեա Տէր զհոգի ծառային քո այս անուան. եւ հանգո զնա, ուր այցելու լինի լոյս երեսաց քոց։[81] Եւս աղաչեմք զքեզ Տէր, յիշեա զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս, որք ուղիղ համառաւտեն[82] զբան ճշմարտութեան քո։ Յիշեա Տէր եւ զերիցութիւնս մեր եւ զոր ի Քրիստոս սարկաւագութիւն եւ զամենայն քահանայական կարգաւորութիւնս։[83] Եւս մատուցանեմք քեզ զբանաւոր պաշտաւնս զայս յաղագս տիեզերաց, եւ վասն սրբուհի, կաթուղիկէ, առաքելական եկեղեցւոյ քո։ Եւ վասն որք պարկեշտաբար եւ զգաստապէս քաղաքավարութեամբ կենցաղավարին։[84] Եւ վասն հաւատարիմ թագաւորին[85] եւ ամենայն պաղատին եւ զինուորեալ մանկանց[86] նոցա։ Տուր նոցա, Տէր, խաղաղական կենաւք զթագաւորութիւնն. որպէս զի եւ մեք հանդարտութեամբ նոցա լռական խաղաղութեամբ[87] զկեանս մեր վարեսցուք ամենայն պարկեշտութեամբ եւ զգաստութեամբ։[88]

---

Ծ. Է. N եւ MA ձեռագրաց տարբեր Յիշատակքը տես էջ 285 եւն։ ||[388] M "կենացն յաւիտենիցն։" ||[389] M "զհոգին ծառային քո... հանգոյ"

երանել զքեզ Աստուածածին, զմիշտ երանելին եւ զամենեւին ամբիծ եւ մայրդ Աստուծոյ մերոյ" եւն. եւ ի վերջոյ թէ' "Սարկաւագն յիշէ զՅիշատակս ննջեցելոց։"

[79] Այս "խնդարհի" ունի Goarի հրատարակութիւնը, իսկ Daniel չունի։ Ընդհանրապէս Յիշատակացս մասը շատ տարբերութեամբ ունին յոյն ձեռագիրները, մանաւանդ Բարբերինեանը։ Այսպէս սկզբան սա բառերը "Սուրբ զերկնային զօրութիւնսն" ունի միայն C, իսկ "սուրբ զմարգարէս" հայուն յատուկ կ'երեւայ։ Համմ. նաեւ Բարսղի Պատարագի նոր թարգմանութեան Յիշատակքն. (վերը' էջ 206 եւն. Ծան. 141 եւն։)

[80] Այստեղ ալ յոյն օրինակք այն միջանկեալ կտորն ունին, զոր նշանակեցինք վերը Բարսղի Յիշատակաց համեմատութեան մէջ. (տես էջ 206, Ծան. 142.)

[81] Յոյն օրինակք' "Վասն հանգստեան եւ քաւութեան հոգւոյ ծառայի քո այս անուան ի լուսաւոր տեղւոջ, ուր չիք ցաւ եւ հեծութիւն. հանգո զնա Աստուած մեր, եւ հանգո զնա' ուր այցելու լինի լոյս երեսաց քո (ὅπου ἐπισκοπεῖ τὸ φῶς τοῦ προσώπου σου, Goar կը թարգմանէ ubi circnmspectat lumen vultus tni.)

[82] "Ուղիղ համառօտեն," ճիշդն = Յ. τῶν ὀρθοτομούντων κτλ. (Goar կը թարգմանէ qui ...rectè tractant et dispensant.) Տես նաեւ Ծան. 90։

[83] Այսինքն' "զամենայն կարգ քահանայական" կամ նուիրապետական (...καὶ παντὸς ἱερατικοῦ τάγματος.)

[84] Այստեղ կը յաւելու Բարբերինեանը' "Եւ վասն որոց ի լերինս, եւ յայրս եւ ի փապարս երկրի։" Տես Բարսղի Յիշատակքն' էջ 207, տող 476։

[85] Յ. "վասն հաւատացելոց եւ քրիստոնէից թագաւորաց" եւն (ὑπὲρ τῶν πιστοτάτων κτλ.) Բարսղի Յիշատակաց մէջ ալ կ'ըսուի' "զբարեպաշտ եւ զքրիստոսասէր թագաւորսն մեր" եւն։ "Հաւատարիմ" գրչի սխալ մ'ըլլալու է։

[86] Յ. τοῦ στρατοπέδου. Բարսղի նոր թարգմանիչը "եւ զամենայն զաւրականս նոցա։" Բայց "զինուորեալ մանկունք" արդէն սովորական ասութիւն մ'եղած է. տես նաեւ Պատարագիս վերջին աղօթքին մէջ, (Համ. ԻԲ) եւ այլուր։

[87] Յ. ἤρεμον καὶ ἡσύχιον βίον διάγωμεν ("խաղաղ եւ հանդարտ" եւն։)

[88] Հոս կը յաւելուն նոր յունականք որ սարկաւագը բեմին դուռը գալով եւ ուրարն երեք մատներով բռնելով կ'ըսէ' "Ամենեցուն եւ ամենեցունց" (արաբ. եւ իգ.) եւ նոյնը կը սաղմոսէ դասը։ Բարբերինեանը չունի այս յաւելուածն' հայոյն պէս։

*Քահանայն բարձր.* Ընդ առաջինսն յիշեա Տէր եւ զեպիսկոպոսապետն մեր զայս անուն. եւ շնորհեա զնա ընդ երկայն աւուրս եկեղեցւոյ քում սրբոյ, ամբողջ[89] խաղաղութեամբ եւ առողջութեամբ, պատուական եւ բարւոք ուղղաձեւեալ[90] զբան ճշմարտութեան քո։

*Սարկաւագն զՅիշատակ կենդանեացն ասէ այժմ։*[91] *Եւ ապա քահանայն.* Յիշեա Տէր քաղցրութեամբ քով եւ զեղբայրն մեր զայս անուն. եւ պարգեւեա նմա ի մեծամեծ պարգեւաց քոց։ Յիշեա Տէր ըստ բազում գթութեանց քում եւ զիմ զանարժանութիւնս. եւ թող զամենայն յանցանս իմ զկամայ եւ զակամայ. եւ մի վասն իմոց յանցանաց արգելուր զշնորհս Հոգւոյդ սրբոյ յառաջիկայ ընծայէս։[92] Յիշեա Տէր զքաղաքս՝ յորում բնակեալ եմք, եւ զամենայն քաղաքս եւ զգաւառս, եւ որք հաւատով բնակեալ են ի նոսա։[93] Յիշեա Տէր զնաւորդս, զճանապարհորդս, զհիւանդս, զվաստակաւորս,[94] զգերեալս. եւ պարգեւեա զփրկութիւն նոցա։ Յիշեա Տէր զպտղաբերս եւ զբարեգործողս սրբոյ քո եկեղեցւոյ,[95] եւ որք յիշեն զաղքատս ողորմածութեամբ. եւ առաքեա ի վերայ մեր ամենեցուն զառատ ողորմութիւն քո եւ զգթութիւն։[96] — *Ի ձայն.* Եւ տուր մեզ միով բերանով եւ միով սրտիւ աւրհնելով եւ փառաւորել զամենապատիւ եւ զմեծվայելուչ անուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ։ — *Ժողո.* Ամէն։

---

եւն։ ‖402 M "ընդ երկայնաւուրս„ եւն։ ‖404 M բարիոք ուղղաձեւեալ։ ‖409 M "վասն իմոց յանցանաց„ եւն։ ‖416 Հոս եւ քիչ մ'ետքն (ինչպէս գրե-

[89] Հոս "ամբողջ„ անյարմար է եւ ոչ ալ յոյն բնագրէն կռուան մ'ունի, եթէ թարգմանիչը նախնաբար "առողջ„ չէր գրած, որ կարելի է, թէեւ ասով "առողջ„ բառը կրկին անգամ գործածուած կ'ըլլայ նոյն խօսքին մէջ։ Յոյնը կ'ըսէ՝ "...խաղաղութեամբ, ողջ, պատուական, առողջ, երկայնաւուրեայ, եւ ուղիղ„ եւն (ἐν εἰρήνῃ, σῷον, ἔντιμον, ὑγιᾶ, μακροημερεύοντα, եւն։)

[90] "Բարւոք ուղղաձեւեալ զբանն ճշմարտութեան քո.„ նիւթական թարգմանութիւն յունին καὶ ὀρθοτομοῦντα τὸν λόγον τῆς σῆς ἀληθείας, ուստի "ուղղաձեւել„ = ὀρθοτομέω (բուն՝ ուղիղ կտրել), որ այլուր սովորաբար "ուղիղ համառօտել„ ասութեամբ կը բացատրուի։ (Տես վերը Ծան. 82։)

[91] Այս խորագիրն յունարէնին մէջն է՝ Ὁ διάκονος μνημονεύει τὰ δίπτυχα τῶν ζώντων, որ սակայն քանի մը տող ուրիշ խրատագրոց հետ միասին է հոս սովորական յոյն օրինակաց մէջ։ Բարբ. չունի վերջիններս՝ հայոյն պէս։

[92] "Յիշեա Տէր քաղցրութեամբ„ եւն խօսքէն սկսեալ մինչեւ այս տեղ յոյն օրինակաց մեծագոյն մասին մէջ չկայ, եւ ոչ Բարբերինեանին՝ որչափ կ'երեւայ (տես Goar, p. 99—100.) բայց կայ C ձեռագրին մէջ. (տես Dan., p. 360, c. XXI, Ծան.։)

[93] Բարբ. այս տունն աւելի յառաջ ունի քան նոյն իսկ Արքեպիսկոպոսին յիշատակաց մասն. (այսինքն Ծան. 88ի տեղը։)

[94] "Զվաստակաւորս„ ճիշդ է հոս յունարէնին համեմատ (...καμνόντων եւն։) Աստ համապատասխանողն Բարսղի Յիշատակաց մէջ տես վերը՝ էջ 208, Ծան. 156։

[95] Այժմու յունականք՝ "եւ որք յիշեն զաղքատս.„ հայոյն ընթերցուածն ալ հին է առանց երկբայութեան, վասն զի թէ հայոյն եւ թէ յունականաց ընթերցուածքն քովէքով կան արդէն Բարսղի քով. (տես էջ 206, տող 473—4։)

[96] "Առատ„ ու "եւ զգթութիւն„ բառերը չունին այժմու յունականք. նոյնպէս քիչ մ'ետքն՝ "Ժողո. Ամէն„ եւ "Ժողո. Եւ ընդ հոգւոյդ քում„ պատասխանիքն չկան Danielի հրատարակութեան մէջ, բայց կան Goarի քով (p. 79)։

[97] B պարզապէս "Սարկաւագ„ կ'ըսէ հոս. միւս յունականք՝ "Եւ սարկաւագն գալով պարագ ի քահանայէն եւ գայ, եւ կայնեալ ի սովորեալ տեղւոջ՝ ասէ։„

*Քահանայն ի ձայն.* Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսեան։ — *Ժողո.* Եւ ընդ հոգւոյդ քում։

*Սարկաւագն քարոզէ ի թիւ.*[97] Զամենայն սուրբս յիշելով՝ եւ եւս խաղաղութեամբ զՏէր աղաչ.։ — *Ժողո.* Տէր ողորմեա։ — [*Սար.*] Վասն մատուցեալ պատուական եւ սուրբ ընծայիցս Տեառն Աստուծոյ մերոյ, զՏէր աղաչ.։ — Որպէս զի Տէր Աստուած մեր ընկալցի զսա ի սուրբ, յերկնային, յիմանալի եւ ի հոգեւոր[98] յիւր մատուցարանն ի հոտ անուշից, զՏէր աղաչ.։ — Փոխանակ առաքեսցէ առ մեզ զշնորհս պարգեւաց Հոգւոյն սրբոյ, զՏէր։ — Եւ եւս փրկելոյ զմեզ յամենայն նեղութենէ, ի բարկութենէ եւ ի վտանգէ,[99] զՏէր աղա.։ — *Ժողո.* Տէր ողորմեա։

ԺԲ. — *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.*[100] Քեզ յանձն արասցուք զամենայն կեանս մեր, մարդասէր Տէր. եւ աղաչեմք եւ մաղթեմք եւ պաղատիմք. արժանաւորեա զմեզ հաղորդել յերկնաւոր եւ ի սոսկալի քո խորհրդոյդ յայսմ ի քահանայական եւ ի հոգեւորական սեղանոյս, ճշմարիտ գիտակցութեամբ,[101] ի թողութիւն մեղաց, ի քաւութիւն յանցանաց, ի Հոգւոյդ սրբոյ հաղորդութիւն, ի ժառանգութիւն արքայութեանդ երկնից,[102] եւ մի ի դատաստան կամ ի դատապարտութիւն։

*Սարկաւագն քարոզէ.*[103] Ընկալ կեցո եւ պահ.։ — *Ժողո.* Տէր ողորմեա։ — [*Սար.*] Զժամ պատարագիս եւ զառաջիկայ աւուրս խաղաղութեամբ ի Տեառնէ խնդրեսցուք։ — *Ժողո.* Շնորհեա Տէր։ — [*Սար.*] Զհրեշտակ խաղաղութեան հաւատարիմ պահապան անձանց մերոց, ի Տեառնէ։ — Զսրբոյ խաչին ամենայաղթ զաւրութիւն յաւգնութիւն անձանց մերոց, ի Տեառնէ։ — Զբարին եւ զաւգտակարն անձանց մերոց եւ զխաղաղութիւն

---

թէ միշտ) լուսանցքի վրայ միայն գրուած է "ի ձայն" խորագիրը։ ‖420 Այս տողն եւ քարոզութիւնքս ալ կան ի N եւ MA, տես ի կարգին. եւ վերը՝ էջ 291։

ԺԲ. Աղօթքիս տեղ N եւ MA ուրիշ մ'ունին (տես վարն ի կարգին) եւ կից քարոզութիւնքը չունին, այլ "Հայր մեր" տէրունական աղօթքը կը կցեն անմիջապէս։ Ընդհանրապէս այս ամէն մասերուն մէջ կը տարբերի արդեամբք "Աթանասի" Պատարագը։ ‖438 M "զառաջիկա։" ‖445 M "պատասխանա-

[98] Այս "հոգեւորն" յունարէնին համեմատ ուրիշ տեղ մ'ունենալու է, այսինքն՝ "...յիմանալի յիւր մատուցարան՝ ի հոտ հոգեւոր անուշից, փոխանակ առաքեսցէ մեզ զաստուածային շնորհս եւ զպարգեւ Հոգւոյն սրբոյ, աղաչեսցուք։" Բուն այսմ հայոյն անստուգութիւնն ալ հոս տարբեր է յունէն։"

[99] Յ. "...ի վտանգէ, եւ ։ հարկէ" եւն։ Յաջորդ՝ "Ժողո. Տէր ողորմեա" ունի Goar (p. 80), բայց ոչ Daniel.

ԺԲ. [100] Յ. պարզ՝ "Եւ քհ. աղօթէ։" — Քիչ մ'ետքը կ'ըսէ յոյնը "զամենայն կեանս մեր եւ զյոյս, մարդասէր Տէր" եւն։

[101] Յ. μετὰ καθαροῦ συνειδότος (մաքուր մտօք խղճի). տես վերը՝ Ծան. 36։

[102] Յոյնը կը կցէ՝ "ի համարձակութիւն առաջի քո," որ արդէն քիչ մը վերը կար նաեւ հայերէն բնագրին մէջ. (տես էջ 362, տող 374։)

[103] Քարոզութեանցս համեմատութիւնը տես վերը՝ Ծան. 50—55։ Բարք. առաջին երկու տունը յիշելով շատացած է։

աշխարհի, ի Տեառնէ։ — Զհանգուցեալ ժամանակաց մերոց խաղաղութեամբ կատարել, ի Տեառնէ։ — Զքրիստոնէական կատարումն կենաց մերոց անվիշտս եւ անամօթալի եւ բարի պատասխանատուութեամբ կալ առաջի ահեղ բեմին, ի Տեառնէ խն.։ — Զմիաբանութիւն հաւատոյ, եւ զհաղորդութիւն Հոգւոյն սրբոյ հայցելով,[104] ի Տեառնէ։ — Զամենասուրբ Աստուածածինն։ — Զանձինս եւ զմիմեանս եւ զամենայն կեանս մեր Քրիստոսի Աստուծոյ յանձն արասցուք։

*Քահանայն ի ձայն.* Եւ արժանաւորեա զմեզ, Տէր, համարձակութեամբ եւ անդատապարտս իշխել կարդալ զքեզ, երկնայինդ Աստուած Հայր սուրբ, եւ ասել։

*Ժողո.* Հայր մեր, որ յերկինս ես. սուրբ է անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. եղիցին Տէր կամք քո, որպէս յերկինս եւ յերկրի։ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ. Թող մեզ զպարտս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց. եւ մի տար զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէն։

*Քահանայն ի ձայն.* Զի քո է թագաւորութիւն եւ զաւրութիւն եւ փառք յաւիտեանս։[105] — *Ժողո.* Ամէն։

*Քահ.* Խաղաղութիւն ամենեցուն։ — *Ժողո.* Եւ հոգւոյ քում։ — *Սար.* Զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք։ — *Ժողո.* Քեզ Տեառն յանձն։

ԱՂԱԻԹՔ ԽՈՆԱՐՀՄԱՆ

ԺԽԹ. — *Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.*[106] Գոհանամք զքէն Թագաւոր անտեսանելի որ անբաւ զաւրութեամբ քո արարչագործեցեր զամենայն ինչ, եւ բազում ողորմութեամբ քո զամենայն ի չգոյէ ի գոյ ածեր։ Դու Տէր նայեաց ի սրբութենէ քումմէ[107] յայսոսիկ, որք խոնարհեցուցին քեզ զգլուխս իւրեանց։ Վասն զի ոչ խոնարհեցուցին մարմնոյ եւ արեան. այլ քեզ ահաւորիդ Աստուծոյ։ Արդ դու Տէր, զառաջիկայս մեզ ամենեցուն ի բարիս դիւրացո[108] ըստ իւրաքանչիւր պիտոյից։ Որոց նաւեն՝ նաւակցեա. որոց

տութեամբ։„ ‖[450] M "ի ձայն„ լուսանցքի վրայ. նոյնպէս քիչ մ'ետքն, եւն։

[104] Այս տունն եւ "Զանձինս„ եւն՝ կից են յունարէնին մէջ, այսպէս՝ "Զմիաբանութիւն հաւատոյ եւ զհաղորդութիւն Հոգւոյն սրբոյ հայցելով, զանձինս մեր եւ զմիմեանս եւ զամենայն կեանս Քրիստոսի Աստուծոյ յանձն արասցուք։„

[105] Յ. "Զի քո է թագաւորութիւն, եւ զօրութիւն, եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ„ եւն։ Առոր կից ժողովրդեան ամէն Պատասխանիք կան միայն Goarի քով. վերջինը ("Քեզ Տեառն յանձն արասցուք„ բառ հայերէնին՝ որ սխալ գրչութեան մ'արդիւնքն ըլլալու է,) պարզապէս է σοὶ Κύριε ("քեզ Տեառնդ,„ այսինքն՝ զգլուխս մեր խոնարհեցուցանեմք։)

ԺԹ. [106] Յ. պարզապէս "Եւ քահանայն աղօթէ.„ նոյնպէս յաջորդ աղօթքին սկիզբն։

[107] "Ի սրբութենէ քումմէ.„ յոյնը՝ οὐρανόθεν ("յերկնուստ։„)

[108] "Դիւրացո.„ ճշգիւ = Յ. ἐξομάλισον. (Goar այս անգամ իմաստն այսպէս կը բացատրէ՝

Ճանապարհորդեն՝ ճանապարհակցեա․ զգերեալսն փրկեա, զմոլորեալսն դարձո․ զցրուեալսն ժողովեա,[109] զհիւանդացեալսն բժշկեա, որ ես բժիշկ հոգւոց եւ մարմնոց: — Ի ձայն. — Շնորհաւք եւ գթութեամբ եւ մարդասիրութեամբ միածնի Որդւոյ քո․ ընդ որում աւրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ ամենասուրբ եւ բարերար Հոգւովդ քո, այժմ եւ: — Ժողո. Ամէն:

*Քահանայն խոնարհի եւ աղաւթէ.* Նայեա Տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից ի սրբութենէ[110] քումմէ եւ յաթոռոյ փառաց թագաւորութեանդ քո: Եկ ի սրբել եւ ի կեցուցանել զմեզ,[111] որ ընդ Հաւր նստիս եւ աստ պատարագիս.[112] արժանի արա[113] տալ մեզ յանարատ մարմնոյ քո եւ ի պատուական արենէս, եւ ի ձեռն մեր՝ ամենայն ժողովրդեանս:[114]

*Ու երկրպագէ երիցս եւ համբուրէ զսեղանն ասելով.* Բարձրեալ ես դու յերկինս, Աստուած եւ յամենայն երկրի են փառք քո:[115] — *Սարկաւագն բարձր.* Պրոսխումէն: — *Քահանայն վերացուցանէ զհացն երկոքին ձեռաւքն բարձր քան զգլուխն ասելով.*[116] Ի սրբութիւնս սրբոց: — *Ժողո.* Միայն սուրբ, միայն Տէր Յիսուս Քրիստոս, ի փառս Աստուծոյ Հաւր. Ամէն:

*Ու բեկանէ զհացն ըստ աւրինին, եւ արկանէ մասն ի բաժակն ասելով.*[117] Լրումն Հոգւոյն սրբոյ: — *Դպիրքն պաշտեն.*[118] Քրիստոս պատա-

---

ԺԹ. ‖470 M "որոց նաւէն:" ‖488 "Քրիստոս պատարագեալ" եւ քիչ

...in bonum ex aequo confer, կամ "շնորհեա ի բարիս առ հաւասարակ:")

109 "Զգերեալսն փրկեա. զմոլորեալսն դարձո. զցրուեալսն ժողովեա." չկայ յունականին մէջ:

110 Β. ἐξ ἁγίου κατοικητηρίου σου ("ի սրբոյ բնակութենէ քումմէ:") — Այս աղօթքն շատ համառօտ ձեւով ունի Բարբ. Բարսղի Պատարագին մէջ. (տես վերը՝ էջ 155 եւ 212, Ծան. 186:)

111 "Եւ ի կեցուցանել զմեզ." չունին այժմու յունականք:

112 "Եւ աստ պատարագիս." հայոյն յատուկ է. Β. καὶ ὧδε ἡμῖν ἀοράτως συνών ("եւ աստ ընդ մեզ ես առանց տեսանելւոյ." B παρών.) Տես նաեւ Բարսղի Պատարագին մէջ՝ էջ 212, Ծան. 186, ինչպէս նաեւ Աղօթքին հնութեան մասին՝ էջ 175:

113 Β. καὶ καταξίωσον τῇ κραταιᾷ σου χειρὶ ("արժանի արա զօրաւոր ձեռամբ քով" եւն:)

114 Ասկէ սկսեալ հայերէնը կրկին կը նմանի Բարսղի նորագոյն հայ թարգմանութեան հետ՝ շեղելով սովորական յոյն օրինակներէն: Բարբ. չունի յունականաց բազմաթիւ նոր յաւելուածները, բայց եւ ոչ բոլորովին նոյն է հայերէնին այժմու ձեւին հետ:

115 "Բարձրեալ ես" եւն ունի միայն Բ. Տես Բարսեղ՝ էջ 213, եւ Ծան. 187—8: Սովորական յունականք կը սահմանեն քահանային եւ սարկաւագին երեք անգամ ըսել՝ "Աստուած ողորմեա ինձ մեղաւորիս:"

116 "Ճիշդ Բարսղի մէջ կայ այս խորագիրն (եւ "երկոքին ձեռաւքն" ասութիւնը) եւ յաջորդք. տես էջ 213, Ծան. 189—191: Սովորական յունականք կ'ըսեն՝ "Սրկ. Պրոսխումէն: Եւ քահանայն վերացուցանէ զսուրբ հացն ասելով. Սրբութիւնք՝ Սրբոց: Ժողով. Միայն սուրբ" եւն:

117 Բարսղի նոր թարգմանութեան հետ՝ խորագիրս այստեղ ունի միայն Բարբերինեան: Սովորական յունականք այստեղ շատ ճախուցած են խրատագիրներով, քարոզութեամբ եւն (տես Dan., p. 366, c. XXXIV,) — "Լրումն Հոգւոյն սրբոյ" խօսքը բոլոր յոյն օրինակաց մէջն է՝ πλήρωμα πίστεως Πνεύματος ἁγίου ("Լրումն հաւատոյ Հոգւոյն սրբոյ.") միայն Բարբ. հոս ալ հայոյն համեմատ ունի՝ εἰς πλήρωμα Πνεύματος ἁγίου.

118 Այս նաեւ այսպէս Բարսղի քով (տես էջ 213, Ծան. 191:) Բարբերինեանը հոս այսպիսի բան մը չունի իրաւամբ. իսկ սովորական յոյն օրինակները աւելի վերը ("Միայն սուրբ"

բազեալ բաշխի ի միջի մերում. ալէլուիա: Զմարմին իւր տայ մեզ կերակուր. եւ զսուրբ զարիւն իւր ցաւղէ ի մեզ. ալէլուիա: Երհնեցէք զՏէր յերկինս. ալէլուիա: Երհնեցէք զնա ի բարձունս. ալէլուիա: Երհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա. ալէլուիա: Երհնեցէք զնա ամենայն զաւրութիւնք նորա. ալէլուիա:

## ՃԱՇԱԿՈՒՄՆ[119]

• Ի. — Քահանայն դարձեալ երկրպագէ երիցս, եւ թողութիւն խնդրէ, եւ համբուրէ զսեղանն ասելով. Զմարմին կենարարի անմահի Որդւոյն Աստուծոյ պատարագեալ բաշխի ի միջի մերում, ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց մերոց: Եւ առնու մասն ի ձեռն եւ համբուրէ, եւ խոնարհի եւ նովաւ կնքէ զերեսս իւր երիցս անգամ ասելով. Խոստովանիմ եւ հաւատամ, զի դու ես Որդի Աստուծոյ, որ բարձեր զմեղս աշխարհի: Երիցս ասելով հաղորդի. նոյնպէս եւ զբաժակն ըմպէ երիս ճաշակս:

Եւ ի ժամ հաղորդելոյն դպիրքն պաշտեն. Մատիք առ Տէր եւ առէք զլոյս, ալէլուիա: Ճաշակեցէք եւ տեսէք զի քաղցր է Տէր, ալէլուիա:[120]

[121] Եւ ապա առնու սարկաւագն զընծայսն, եւ դառնայ ի ժողովուրդն ասելով. Երկիւղիւ եւ հաւատով յառաջ մատիք: Եւ քահանայն խաչակնքէ ի վերայ ժողովրդեանն: Եւ համաւրէն ժողովուրդն զձեռս ի վեր ամբարձեալ

---

մ'ետքը "Լցաք„ (տող 516) տողերու կիտադրութիւնը ճշդիւ M ձեռագրին համեմատ պահած ենք: Լամբրոնեանն այս տողերը շատ լիակատար ունի՝ նաեւ Սովորական Պատարագէն առելի. (տես N, տպ. էջ 223—4 եւ վարն ի կարգին:)

Ի. L ձեռագրի այս մասերուն նկատմամբ սա դիտողութիւնը կ'ընէ Հ. Յովս. Վ. Գաթրճեան թէ "Ճաշակումն եւ վերջաւորութիւնք պատարագին Բարսղի միջիններուն (տես վերն՝ էջ 213—4) պէս են.„ բայց որեւէ ընթերցուած մը չի նշանակեր, միայն Պատարագին ծայրը գրուած սա յիշատակարանը՝ "Բարեխօսութեամբ տիեզերաքարոզ հօրս մերոյ սրբոյն Յոհաննու Ոսկեբերանի աղօթեա Քրիստոս Աստուած ամենայն հաւատացելոց եւ գրողի սորա եւ ծնո- եւն կարէն ետքը) կը կցեն նմա խրատագիր մը "Եւ դասն աղմկէ չհաղորդութեան նաւոքն՝ զուսուրն կամ զՍրբոյն:„

Ի. [119] Այս ամբողջ հատածն մինչեւ Գոհութեան Աղօթքը նոյնութեամբ կը գտնուի Բարսղի Պատարագի նոր Թարգմանութեան վերջը. (տես էջ 213, Հան. ԺԱ, եւ Ծան. 192:) Այս ամէնը չկայ Բարբերինեան օրինակին մէջ, որ "Լրումն Հոգւոյն սրբոյ„ ըսելէն վերջը՝ ունի միայն հետեւեալ տողը. "Եւ յետ հաղորդելոյ ամենեցուն, եւ յարժամ առն Սարկաւագն ղօղեան առ ժողովուրդն է ծածուկ. Գոհանամք զքեն„ եւն. (տես Հան. ԻԱ:) Բայց նաեւ սովորական յոյն օրինակները կրնանք ըսել բոլորովին տարբեր են. այնպէս որ հայն եւ յոյնք իրարու հետ համեմատել անկարելի է. հազիւ մէկ երկու նմանութեան կէտեր կան. (տես այս մասն Daniel, p. 367—69, c. XXXV. եւ Goar, p. 82 եւն:)

[120] Մինչեւ հոս յունականք բոլորովին տարբեր են, որոնք Ճաշակմանէն յառաջ ի միջի այլոց երկար աղօթքներ եւն կը դնեն, որոնց առաջինը կը սկսի՝ "Հաւատամ Տէր եւ խոստովանիմ, եթէ դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ, որ եկիր յաշխարհ՝ փրկել զմեղաւորս, որոց առաջինն եմ ես„ եւն եւն: Աւելորդ է ըսել որ հոս եւ յաջորդաց մէջ նոյն իսկ յունական օրինակք իրարու շատ աննման են:

[121] Աստէ սկսեալ "ՔՀ. ի ծածուկ աղօթէ՝„ Հաղորդութիւն բաշխելու մասն է, որ կայ սովորական յունականաց մէջ ալ. բայց ոչ թէ

*վերածայնեն. **Օ**ւրհնեալ որ գալոց ես անուամբ **Տ**եառն. **Ա**ստուած եւ **Տ**էր երեւեցաւ մեզ։*[122] *Ու հաղորդին.*[123] *եւ զկնի հաղորդելոյն խաչակնքէ*[124] *[քահանայն.] **Կ**եցո **Տ**էր զժողովուրդս քո. եւ աւրհնեա զժառանգութիւնս քո. հովուեա եւ բարձրացո զսոսա յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։ — Սար. **Ա**մէն։*

[152] *Ու դնէ զընծայսն ի սեղանն եւ ծածկէ: Ու Սար. **Զ Տ**էր աղաչեսցուք։ — Դպիրն. **Տ**էր ողորմեա։*

*Քահանայն ի ծածուկ աղաւթէ. եւ սարկաւագն խունկ արկանէ ընծայիցն եւ սեղանոյն. եւ տանին յաւանդատունն զսրբութիւնն եւ պաշտեն.* ***Լ**ցաք ի բարութեանց քոց, **Տ**էր, ճաշակելով զմարմին քո եւ զարիւն. փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ։ **Ո**ր հանապազ կերակրես զմեզ, առաքեա եւ այժմ զհոգեւոր քո զաւրհնութիւն. փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ։*

*Ու ի տանելն քահանայն ասէ. **Օ**ւրհնեալ է **Ա**ստուած այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։ — Ժողո. **Ա**մէն։*

## ԱՂԱՒԹՔ ԳՈՀՈՒԹԵԱՆ

**ԻԲ.** — *Քահ.*[126] *Գոհանամք զքէն, մարդասէր **Տ**էր, եւ բարերար հոգւոց մերոց, զի երկնաւոր եւ անմահ խորհրդոց քոց արժանաւորեցեր զմեզ։*[127] ***Ն**ոյն արդ ուղղաձեւեա*[128] *զճանապարհս մեր. կեցո*[129] *զմեզ զամենեսեան երկիւղիւդ քո. պահպանեա զկեանս մեր. հաստատեա զշաւիղս մեր.*

---

զաց խմոց եւ ամենայն եղբարց անապատիս. ամէն։" ‖[506] M "եւ համբոյրէն (փխ. "համարէն") ժողովուրդն զձեռսն ի վերաբարձեալ վերածայնեն" եւն։

հաս, այլ "Գոհանամք զքէն" (Հատ. ԻԱ) աղօթքէն անմիջապէս առջը. (տես Dan., p. 369—70, c. XXXVI հատածի ծայրը։)

[122] Յ. կ'ըսէ "...եւ առեալ (սարկաւագին) զբաժակն բարեպաշտութեամբ՝ երթայ ի դուռն (բեմին կամ խորանին), եւ վերացուցեալ զբաժակն՝ ցուցանէ ժողովրդեանն ասելով. Երկիւղիւ, հաւատով եւ սիրով յառաջ մատիք։ Դասն. Օրհնեալ որ գաս յանուն Տեառն։"

[123] Յոյն օրինակք խրատագրով միասին կը դնեն հաղորդութիւն տալու բանաձեւն ալ՝ "Հաղորդի ծառայս Աստուծոյ այս անուն ընդ պատուական եւ սուրբ մարմնոյ եւ արեան Տեառն եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ ի թողութիւն մեղաց իւրոց եւ ի կեանս յաւիտենականս։"

[124] Յ. "եւ օրհնէ" կ'ըսէ. բայց տալի՝ "Կեցո զժողովուրդս քո, եւ օրհնեա զժառանգութիւնս քո." Մնացեալը չունի։

[125] Աստի սկսեալ մինչեւ Հատածիս վերջը յունականաց հետ նմանութիւն չունի. միայն "Օրհնեալ է Աստուած մեր ամենայն ժամ, այժմ եւ միշտ" եւն՝ կայ յունականաց մէջն ալ եւ այն Սարկաւագին վերջին քարոզութենէն (— հոյոյն մէջ "Երկիւղածութեամբ" եւն, Հատ. ԻԱ.) անմիջապէս յառաջ։

ԻԲ. [126] Այս աղօթքն, ինչպէս ըսինք, յունարէն օրինակները քիչ մը վերն ունին (տես Ծան. 121։) Խորագիրն է՝ "Յայնժամ կցէ քահանայն զԱղօթս Գոհութեան (τὴν τῆς εὐχαριστίας εὐχήν) ասելով։" — Նոյն աղօթքը քիչ մը փոխուած՝ Բարսղի քով, էջ 214—5 եւ Ծան. 193—199։

[127] Յ. "յայսմ աւուր" կը յաւելու (τῇ παρούσῃ ἡμέρᾳ.)

[128] "Ուղղաձեւեա զճանապարհս մեր" բառական թարգմանութիւն յունարէնին ὀρθοτόμησον ἡμῶν τὴν ὁδόν. (Goar կը թարգմանէ՝ Viam nostram dirige.) Տես վերը՝ Ծան. 90։

[129] Յ. στήριξον ἡμᾶς ("հաստատեա զմեզ" եւն։) — Քիչ մ'ետքը "հաստատեա զշաւիղս մեր" = Յ. ἀσφάλισαι (պատսպարեա, արա ապահով եւ անքոյթ, եւն։)

աղաչանաւք սրբուհւոյ եւ փառաւորեալ Աստուածածնիդ եւ աղաւթիւք ամենայն սրբոց քոց։

[130] Սարկաւագն քարոզէ.[131] Երկիւղածութեամբ եւ հաւատով ընկալեալ յաստուածային, ի սուրբ, յերկնային, յանմահ, յանարատ եւ յանապական խորհրդոյս՝[132] արժանապէս զՏեառնէ գոհացարուք։ — Ժողո. Տէր ողորմեա։ — Սար. Ընկալ կեցո եւ։ — Ժողո. Տէր ողորմեա։ — Սար.[133] Զաւրս զայս խաղաղական սրբութեամբ եւ առանց մեղաց կատարել ի Տեառնէ։ — Ժողո. Շնորհեա Տէր։ — Սար. Զանձինս։ — Ժողո. Քեզ Տեառն յանձն։

Քահանայն ի ձայն. Զի դու ես սրբութիւն մեր, քեզ փառս մատուցանեմք, այժմ եւ միշտ եւ։

Սար. Խաղաղութեամբ երթիցուք։ — Դպ. Յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ — Սար. ԶՏէր աղաչեսցուք։ — Ժողո. Գ Տէր ողորմեա։[134]

## ԱՂԱՒԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ

ԻԲ. — Քահանայն իջանէ ի մէջ եկեղեցւոյն եւ ասէ զաղաւթս վերաձայն.[135] Որ աւրհնես զայնոսիկ, որ աւրհնեն զքեզ, Տէր, եւ սուրբ առնես զյուսացեալսն ի քեզ. կեցո զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս քո։ Զլրումն եկեղեցւոյ քո պահեա։ Սուրբ արա զնոսա՝ որք ողջունեն սիրով զվայելչութիւն տան քո։[136] Դու զմեզ փառաւորեա աստուա-

ԻԲ. ‖540 «վերաձայն» բառը լուսանցքի վրայ ունի M։ — Աղօթքը չկայ «Աթանասի» քով. ուստի հոս կը համեմատենք N եւ MAի ընթերցմունքը։ ‖542 Նաեւ MA «զյուսացեալսն.» N «զյուսացեալս, եւ յետոյ՝ «կեցո, Տէր, զժողովուրդս քո» եւն։ ‖545 Նաեւ MA «որք ողջունեն» եւն. N «այլ ողջու-

[130] Այս ամբողջ քարոզութիւնը չունի Բարբերինեանն, որ աղօթքէն ետքը կը կցէ «Զի դու ես սրբութիւն» եւն վերջաբանն, Սարկաւագին «Խաղաղութեամբ երթիցուք» եւ ժողովրդեան՝ «Յանուն Տեառն։» Անկէ ետքը Goar (p. 100) ուրիշ բան մը չի նշանակեր Բարբերինեան օրինակին մասին, որով կ'երեւայ թէ կը լինայ հոն Պատարագն՝ առանց «Որ օրհնես» աղօթքն ալ ունենալու։ — Նոր յունականք ունին քարոզութիւնս. (տես Dan., p. 370, cap. XXXVII.)

[131] Յ. «Եւ գայ Սարկաւագն եւ կանգնեալ ի սովորեալ տեղւոջ, ասէ. Ո–թի–, ընկալեալք յաստուածային» եւն, ուստի առանց «Երկիւղածութեամբ եւ հաւատով» բառերն ունենալու։

[132] Յ. «...յաստուածային, ի սուրբ, յանարատ, յանմահ, յերկնային, ի կենդանարար եւ յահաւոր խորհրդոյս Քրիստոսի» եւն։

[133] Անկէ մինչեւ վերջը («Ժող. Քեզ Տեառն յանձն») այսպէս ամփոփած ունի յունարէնը՝ «Զաւրս զայս ամենայն կատարեալ, սուրբ, խաղաղական եւ առանց մեղաց՝ հայցելով, զանձինս մեր եւ զմիմեանս եւ զամենայն կեանս մեր Քրիստոսի Աստուծոյ յանձն արասցուք։ Ժող. Քեզ, Տէր» (σοί, Κύριε, տես վերը՝ Ծան. 52։)

[134] Յ. «Տէր ողորմեա, Տէր օրհնեա։»

[135] Յունարէնին մէջ խորագիրն եւ խորատագիրն է՝ εὐχὴ ὀπισθάμβωνος, ἐκφωνουμένη παρὰ τοῦ ἱερέως ἔξω τοῦ βήματος (Աղօթք յետ խորանին, զոր ասէ քահանայն ի ձայն բարձր արտաքոյ բեմին։) — Այս Աղօթքն, որ սովորական Պատարագին մէջն ալ կայ, լոյս ընծայած է մեր տպարանէն բազմաթիւ լեզուներու թարգմանուած (Ա. Տպ. Վիեննա 1837ին՝ 25 լեզուներով, Բ. Տպ. 1893ին՝ 50 լեզուաւ։)

[136] Յ. ἁγίασον τοὺς ἀγαπῶντας τὴν εὐ-

ծայրին զաւրութեամբ քո, եւ մի թողուր զյուսացեալքս ի քեզ։ Խաղաղութիւն պարգեւեա ամենայն աշխարհի,[137] եկեղեցեաց, քահանայից, թագաւորաց մերոց եւ զինուորեալ մանկանց նոցա[138] եւ ամենայն ժողովրդեանս։ Զի ամենայն տուրք բարիք եւ ամենայն պարգեւք կատարեալք ի վերուստ են՝ իջեալ առ ի քէն որ ես Հայր լուսոյ։[139] Եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւ.։[140]

Եւ ժողովուրդն միաբան ասեն.[141] Եղիցի անուն Տեառն աւրհնեալ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։ Զայս ասելով երիցս անգամ:

[142]Քահանայն դարձեալ ելանէ ի բեմն եւ երկրպագեալ համբուրէ զսեղանն: Դառնայ ի վերայ ժողովրդեանն, եւ խաչակնքեալ ասէ.[143] Կատարումն աւրինաց եւ մարգարէից դու ես Քրիստոս Փրկիչ մեր, որ լցուցեր զամենայն հայրական տնաւրէնութիւնս, լցո եւ զմեզ Հոգւովդ քո սրբով։[144] — Ժողո. Ամէն։ — Աւրհնեցից զՏէր յամենայն ժամ։ Ի բուն ասի:[145]

Իսկ կէս-սարկաւագն նշխար բերէ առաջի քահանային. եւ նա աւրհնեալ բաշխէ ամենեցուն, մինչդեռ ասի սաղմոսն: Եւ յետ այնր խաչակնքէ զժողովուրդն ասելով.[146] Աւրհնութիւն Տեառն ի վերայ ձեր, այժմ եւ միշտ եւ

---

նեցին„ եւն, եւ առկէ ետքը չունի ատ խօսքը. «Դու զմեզ փառաւորեա աստուածային զօրութեամբ քո.„ (զոր ունի նաեւ MA։) ‖547 Նաեւ MA «եկեղեցեաց„ եւն. N «եկեղեցւոյ.„ յետոյ՝ N «թագաւորաց [illegible] ... մանկանց նոցին„ (ի լուս. «[illegible],„ տես այլ. էջ 225, ծան. 1) եւ չունի «եւ ամենայն ժողովրդեանս.„ մինչ MA այս ամէնն ունի Mի համեմատ՝ ինչպէս վերը գրուած է։ ‖549 Նաեւ MA «տուրք բարիք.„ N «տուրք եւ բարիք։„ ‖550 Միայն N չունի «վայելէ„ բայը. ունի MA։ ‖551—55 M այսպէս կից ունի խորագիրքս՝ «Զայս ասելով երիցս անգամ քահանայն դարձեալ ելանէ„ եւն։ ‖562 M

πρέπειαν τοῦ οἴκου σου («[illegible] զվայելչութիւն„ եւն։) Սակայն այս «[illegible]„ արդէն սովորական եղած է Պատարագամատոյցներու մէջ (տես Բարսղի մէջ, էջ 185, ծան. 14, եւ այս Պատարագիս մէջ՝ վերը ծան. 17։)

137 Յ. «աշխարհի քում„ (τῷ κόσμῳ σου.)

138 Յ. τῷ στρατῷ (զօրաց։) Տես նաեւ վերը ծան. 86։ — Ասոր կից խօսքը՝ Յ. «եւ ամենայն ժողովրդեան քում։„

139 Յ. եղակի ունի ամբողջ նախադասութիւնը՝ «զի ամենայն տուր բարի եւ ամենայն պարգեւ կատարեալ ի վերուստ է, իջեալ (καταβαῖνον) առ ի քէն՝ ի Հօրէդ լուսոյ (...τοῦ πατρὸς τῶν φώτων.)

140 Յ. «Եւ քեզ մատուցանեմք փառս եւ գոհութիւն եւ երկրպագութիւն՝ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ„ եւն։

141 Յ. «Եւ դասն ասէ երեք. Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։ Եւ զՍաղմոսն ԼԴ. Օրհնեցից զՏէր։„

142 Այս վերջին մասը ճոխացած է արդի յունականաց մէջ խորագրերով ըստ սովորութեան յունական եկեղեցւոյ եւ ի վերջոյ քանի մը մաղթանքներով բարեխօսութեամբ Յովհ. Ոսկեբերանի. (տես Dan., p. 371—2, c. XXXVIII.)

143 Այս աղօթքին խորագիրն է՝ «Աղօթք յարժամ ամփոփին Սուրբքն„ կամ ըստ Բարբերինեանին «Աղօթք Աւանդատան„ (տես Բարսղի Պտրգ. վերը՝ էջ 159 եւ էջ 216, ծան. 206։)

144 Յ. «լցո եւ զսիրտս մեր ուրախութեամբ եւ ցնծութեամբ (πλήρωσον χαρᾶς καὶ εὐφροσύνης τὰς καρδίας ἡμῶν) յամենայն ժամանակի, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։„

145 Այս մասերը չենք գտներ սովորական յունականաց մէջ նոյնութեամբ նշանակուած. բայց «Օրհնեցից„ արդէն քիչ մը վերը առհմանուած էր. (տես ծան. 141։)

146 Յունականք՝ «Եւ քահանայն գայ եւ

*յաւիտեանս: Եւ ապա երկրպագէ առաջի սեղանոյն ասելով. Տէր Յիսուս Քրիստոս Աստուած ողորմեա մեզ:*

565 *Եւ արձակին ի տունս իւրեանց:*

---

"ի վերա ձեր„ եւն: ‖565 Վերջը ատ յիշատակարանս ունի M. "Ողորմեա Աստուած ստացողի սորա Ներսէս արեղայի եւ ծնողաց իւրոց, եւ գծողի Զաքարիա անարժանի եւ ծնողաց իմոց ննջեցելոց եւ կենդանեաց ամէն:„ Անկէ ետքը կը կցուի այն երկար խրատագիրը՝ "Եթէ յոր ժամու կատարի սրբոյն Բարսղի պատարագն եւ կամ սրբոյն Յոհաննու, այս է„ եւն. (տես վերն՝ էջ 180, ծան. 1:

բաշխէ ժողովրդեան զնշխարն (τὸ ἀντίδωρον,) ասելով. "Օրհնութիւն Աստուծոյ ի վերայ ձեր շնորհօք եւ մարդասիրութեամբ նորա, յամենայն ժամանակ, այժմ եւ միշտ եւն: Դպիր. Ամէն: Քահանայն. Փառք քեզ, Քրիստոս Աստուած մեր, յոյս մեր, փառք քեզ: Դպիր. Փառք Հօր եւ Որդւոյ„ եւն: — Հոս կը յաջորդեն երկու վերջաւոր մաղթանքներ՝ յիշատակութեամբ Ոսկեբերանի. եւ ի վերջոյ կ'ըսուի. "Եւ երկրպագելով եւ գոհանալով զԱստուծոյ վասն ամենայնի, երթայ (քահանայն:) Վախճան աստուածային Պատարագին Ոսկեբերանի.„ (*Τέλος τῆς θείας Λειτουργίας τοῦ Χρυσοστόμου.*) որով կ'աւարտի:

## 2.

### *Իգնատիոսի Պատարագ։*

---

### Ա.

### Տ Ե Ղ Ե Կ Ո Ւ Թ Ի Ւ Ն Ք

*Անշուշտ Աստուածազգեցին պատկառելի անունը, որեւիցէ Ասորիէ մը դրուած այս Պատարագամատուցին գլուխը, շարժած է Կիլիկիոյ բազմաթիւ անապատներուն մէկին մէջ ապրող ասորագէտ Հայ միանձանց մին յաջորդ թարգմանութեան։ Առանց այս անուան՝ դժուարաւ կրնար, կարծենք, թարգմանուելու արժանի համարուիլ։ Ներքին արժէքը շատ քիչ է. ծայրէ ծայր միօրինակ եւ աղաչական, առանց որեւէ պէսպիսութեան եւ պերճութեան նիւթոյ եւ խնդրուածոյ, ճշդիւ այն նկարագրաւ՝ զոր ունին ասորի Պատարագամատուցաց շատերը։ Այս տեսակէտով ամենեւին չի կրնար համեմատուիլ օրինակի համար Հայոց մէջ Սահակայ, Կիւրղի, Գրիգորի եւ Աթանասի անունը կրող խորհրդամատուցաց հետ, որոնք իրենց կազմութեան վեհութեամբն, իմաստից վսեմութեամբն, գաղափարաց ճոխութեամբ գլուխ-գործոց կրնան համարուիլ. որչափ ալ՝ իրարու հետ բովանդակութեան սերտ կապ ունենալով՝ տեղ տեղ կրկնութեան երեւոյթ ունենան։ "Իգնատիոսի„ Պատարագն ընդհակառակն ասորական է՝ ամէն նկարագրական յատկութեամբ Ասորւոց պատարագաց. բայց եւ ոչ անոնց նշանաւորներէն։*

*Ուրիշ կերպ ալ դժուարաւ կրնար ըլլալ։ Շատ նոր ժամանակի ծնունդ է. իսկ Իգնատիոսի Աստուածազգեցի անունն ի հարկէ կեղծիք միայն է, երեւոյթ մ՚որ ասորի բազմաթիւ պատարագաց մեծագոյն մասին վրայ կը տեսնենք։ Ասորի գրականութիւնն՝ եթէ ուրիշ ճիւղերու մէջ ալ այնչափ ճոխ չըլլար, Պատարագամատոյց յօրինելու մէջ աննման բեղմնաւորութիւն ունեցած էր։ Ծանօթ Խորհրդատետրներու թիւը գրեթէ եօթանասուն կը հասնի՝*[1] *իւրաքանչիւր ասորի աղանդ գոնէ քանի մը հատ յատուկ ունենալով։ Այս առատութեան մէջ զարմանք չէ որ ամէն նշանաւոր եկեղեցւոյ հայր Պատարագ մը ստացած է իւր անուամբ։ Այս եւ ոչ ուրիշ իմաստով առնելու է, երբ յաջորդ Պատարագին գլուխն ալ կը գտուի ասորի ձեռագրաց մէջ Իգնատիոսի Աստուածազգեաց հայրապետի անունը։*

*Արդէն Ասեմանի նշանակած էր որ Վատիկանի ասորի ձեռագրաց Նիտրեան հաւաքման կրկին ձեռագրաց* (*Թ.* 3 *եւ* 4) *մէջ՝ կը գտնուի* Anaphora Ignatii Theophori Antiocheni Episcopi, *երրորդ մ՚ալ նոյն գրատան* Codices Ecchellenses *հաւաքման մէջ* (*Թ.* 5)։[2] *Բաւական մանրամասնութիւնք ալ*

---

[1] *Հմմտ.* G. Bickell, Conspectus Rei Syrorum Literariae etc. Monasterii, 1871, p. 65—68. *եւ* F. E. Brightman, Liturgies eastern and western etc. Lond. 1896, p. LV—LXIII.

[2] Assemani, Bibliotheca Orientalis, I, 562, 574.

հաղորդած էր նոյն գիտնականն իւր գործքին մէջ ուրիշ տեղ մը, Եբեդյեսուի՝ «Ծոբաց եւ Հայոց աշխարհի» մետրոպոլտի՝ Եկեղեցական գրոց նշանաւոր Ցանկի ծանօթութեանց մէջ։[1] Այնտեղ յիշուած ծանօթութեան մը համեմատ՝ Ասորիք «Իգնատիոսի» պատարագս նախնաբար յունարէն գրուած կը համարին եւ յետոյ թարգմանուած Ասորերէնի։ Անտիոքայ պատրիարքաց միոյն Իգնատիոսի Նեհեմեա-Ալլահ ԺԶ դարուն՝[2] կը տրուի արաբերէն ցուցակ մը ասորի Պատարագաց,[3] ուր կը յիշուի «Պատարագ Ս. Իգնատիոսի՝ յունարէն գրեալ յԱնտիոք յամի ԻԸ յետ Համբարձման Տեառն, զոր Թարգմանեաց ասորերէն Ս. Յակոբոս եպիսկոպոս Ուռհայոյ կամ Եդեսիոյ։»[4] Այսպէս յետնագոյն Ասորիք. վասն զի հիները թերեւս այս կեղծեաց եւ ոչ ծանօթ էին։ Անկարելի չէ, ինչպէս Ռընոտոյ կը կարծէ եւ որուն համակարծիք է Ասեմանի, որ նախնաբար «Իգնատիոս» անունը միայն կար գրուածքիս գլուխը, ուստի հեղինակն ըլլայ Անտիոքայ բազմաթիւ Իգնատիոս անուամբ ասորի եպիսկոպոսաց մին.[5] եւ յետոյ դրուած ըլլայ հոն՝ գրչաց շփոթմամբ՝ Աստուածազգեցի անունը։

Թէ Յակոբիկեան Ասորւոց (ըստ Ասեմանեայ նաեւ Մարոնիտներու) յատուկ Պատարագ մըն էր սկզբանէ հետ, տարակուսի տակ չէ։ Նոյն իսկ Յիշելեաց մէջ Աթանասի, Բարսղի եւ ուրիշներուն անուանց հետ Սեւերոսի եւ Դիոսկորոսի յիշատակութիւնը կը ցուցընէ որ Յակոբիկեանց քով ի գործածութեան էր։ Անտարակոյս, ինչպէս ուրիշ բնագիրներու արկածներէն ալ ծանօթ է, կրնան աս անուններն ետքէն աւելցուած ըլլալ. բայց արդէն այս աւելցուիլը եւ այսպէս ասորի ձեռագրաց մէջ այն անուններուն պահուիլը՝ կը ցուցընէ որ Յակոբիկեանց քով ծանօթ ու գործածական էր եւ անոնցմէ օրինակուած են գոնէ Վատիկանու վերոյիշեալ ձեռագիրքն։ Հայերէնին մէջ ճիշդ այս անուանց պակսիլը թարգմանչին վերագրելու ենք կարծենք, ինչպէս նոյն տեղւոյ ծանօթութեանց մէջ դրինք։

Ասորի բնագիրն՝ որչափ որ մեզի ծանօթ է, չէ հրատարակուած։ Թարգմանութիւն մը հոգացած է Ռընոտոյ իւր երկհատոր գործքին մէջ՝ լատիներէն լեզուաւ, բայց առանց որեւէ ձեռագրի տարբերութիւն յիշելու, էջ մը «Դիտողութիւնք» միայն կցելով վերջը։[6] Ռընոտոյի լատիներէն թարգմանու-

---

[1] Ass., B. O. III, 1, p. 17.

[2] Հմմտ. այս անձին համար՝ Ass., B. O, I, 536, II, 229.

[3] Նեհեմեա-Ալլահի այս ցանկը լատիներէն թարգմանութեամբ Աստուածեղէն Պաշտամանց իւր գրութեան Գ. հատորին մէջ դրած էր Կոռնելիոս Շուլտինգ, ըստ վկայութեան Փաբրիկիոսի (Bibl. Graeca, V, p. 41), որմէ առած կը յիշէ Ասեմանի։

[4] Արդէօք այստեղ յիշուածը համբաւաւոր Յակոբ Եդեսացի «Թարգման» կոչուած ասորի մատենագիրը կ'ուզուի իմացուիլ, որ մեռած է 708—710ին Յ. Ք. (Հմմտ. Ass., B. O., I, 426, 488, III, 1, p. 229 եւն։) Այն ատեն Պատարագս չափէն աւելի հին կը դրուի. այսչափ հնութիւն Պատարագս ամէն դէպքի մէջ չունի։

[5] Ռընոտոյ, Հատ. Բ, էջ 225—6։ Ասեմանի կը յաւելու թէ թերեւս Անտիոքայ պատրիարքներէն Իգնատիոսի Ա. կամ Իգնատիոսի Բ. կրնայ ընծայուիլ։ Առաջինը մեռած է 878ին Յ. Ք. (տես B. O., II, 348 եւն), երկրորդը ձեռնադրուած 1222ին. (տես B. O., II, 371 եւն։) Վերջինս՝ նոյն իսկ հայերէն թարգմանութեանս պատճառաւ՝ անկարելի է։ — Ուրիշ «Իգնատիոս» Պատրիարքաց Պատարագներ ալ կան, երկուքը թարգմանուած Ռընոտոյի գրքին մէջ. այսպէս՝ Պատարագ Յոհաննու Իգնատիոսի Իբն Մաադան († 1263ին, Թրգմ. Renaudot, II, 508-523.) եւ Պատարագ Իգնատիոսի Պետրոսի Իբն Վահիբ († 1332, Թրգմ. Ren., II, 524—543.) կայ նաեւ Պատարագ Իգնատիոսի Բեհնամ (Ձեռ. Վատիկ. ասորի Թ. 33։)

[6] Renaudot, Liturgiarum Orientalium Collectio. Parisiis 1716, II, p. 215—227; ed. Francofurti 1847, II, p. 214—224. Մենք երկրորդ տպագրութիւնը գործածած ենք։

թիւնն առած է նաեւ Մինեէ իւր Հայրախօսական հսկայ հաւաքածոյին մէջ՝ Ս. Իգնատիոսի Աստուածազգեցի ուրիշ գրութեանց կարգին։[1] Ցաւօք ծանօթութեանց մէջ ստիպուած էինք Հայերէնը Ռընոտոյի թարգմանութեան հետ համեմատել, բնագիրն առջեւնիս չունենալով։ Թերեւս աւելորդ էր ամէն շեղում նշանակել, քանի որ՝ ինչպէս համեմատութենէն ալ կը տեսնուի, Հայերէնն եւ Ռընոտոյի թարգմանութիւնը բոլորովին նոյն չեն, միեւնոյն Պատարագին երկու տարբեր խմբագրութիւն ըլլալով։

Եթէ շատ հին չէ Ասորին ընդհանրապէս, Հայերէն աւելի նորագոյն ժամանակի վերաբերելու է եւ կը վերաբերի արդէն։ Պատարագիս Լիոնի ձեռագրին մէջ գտնուիլը կը ցուցնէ մէկ կողմանէ որ 1314էն (որ տարին գրուած է Լիոնեան հաւաքումը) գոնէ քանի մը տասնեակ տարի յառաջ արդէն թարգմանուած ըլլալու էր։ Եթէ ուրիշ կռուան մ'ալ չգտնուէր, թարգմանութեան ընդհանուր նկարագրէն կրնայինք հետեւցընել որ նոյն ԺԳ, շատ շատ ԺԲ դարու մէջ եղած է փոխադրութիւնը։ Բարեբախտաբար թարգմանչէն մէկ դիտողութիւնը նեցուկ մը կ'ըլլայ թուականը քիչ մ'աւելի ճշդելու։ Ասորի բնագրին մէկ խրատագրին առթիւ՝ որ Հայ եկեղեցւոյ սովորութեան համաձայն չէր, բաւական երկար խորհրդածութիւն մը հիւսած է թարգմանիչը, վկայ բերելով ոչ միայն "Վասիլէոսի" (ուստի Բարսղի Պատարագին Հայերէն Նոր թարգմանութիւնը, տես էջ 180 եւն) եւ Յովհ. Ոսկեբերանի (տես էջ 353) Պատարագները, հապա նաեւ "Ներսէսի Լամբրոնացւոյ Պատարագի Մեկնութիւնը, որ եսքը կրկին գրուած է 1192ին։ Ըստ այսմ ԺԳ դարու ընթացքին մէջ եղած է փոխադրութիւնը, անշուշտ քիչ յառաջ քան 1289 տարին, երբ Մոնաքոնի օրինակին գաղափարը գրուած է, որ՝ ուրիշ մերձաւորապէս նոյն ատեններ փոխադրուած բնագիրներու հետ՝ չունի այս բնագիրն ալ, անշուշտ ան միջոցին տակաւին քիչ ծանօթացած ըլլալով (հմմտ. ծան. 97)։ Թարգմանչէն անձին վրայ որեւէ տեղեկութիւն չունինք, բայց միայն կրնանք ապահովութեամբ ընդունիլ որ Կիլիկիացի մըն էր, կամ թերեւս Եփրատայ մօտերը բնակող Հայ կրօնաւորաց մին։

Թարգմանութեան նիւթին արժէքին վրայ պէտք չկայ հոս դիտողութիւն մ'ընելու։ ԺԳ դարու ուրիշ Հայ թարգմանութեանց կարգէն է ամէն տեսակէտով։ Աչքի կը զարնէ միայն այն՝ որ ասորերէնի հետք շատ քիչ կայ թարգմանութեան մէջ, եթէ քանի մը մանր մունր դարձուածներ չհաշուենք։ Վերջիններս իրենց տեղը նշանակած ենք ծանօթութեանց մէջ։ Թերեւս՝ եթէ ասորի բնագիրը հրատարակուած ըլլար եւ զայն համեմատել կարենայինք, քանի մը մութ տեղեր աւելի դիւրաւ մեկնուէին։ Ընդհանրապէս ասորւոյն եւ Հայերէնի իրարու ունեցած փոփոխ աղերսն անով միայն կրնար որոշ կշռադատուիլ։

Շատ մեծ յարգ ունի մեզի համար այս պատարագս ուրիշ կողմանէ։ Ասորի հեղինակն՝ ով որ ալ ըլլայ, ունեցած է իւր առջեւ այլեւայլ Պատարագներ եւ գործածած. երեւոյթ մ'որ Ասորւոց քով շատ ցանցառ չէ։ Ծանօթ է օրինակի համար "Պատարագ Ս. Առաքելոց" կոչուածը, զոր ԺԲ դարուն հաւաքած է Յովհաննէս Պատրիարք Բար-Վահբուն[2] բազմաթիւ ուրիշ Պատարագներէն

---

[1] Migne, Patrologiae cursus completus. Series Graeca, V, p. 969—978.

[2] Տես G. Bickell, Conspectus etc., p. 67. — "Յովհաննու Բար-Վահբունի" († 1193) Պատարագ մը կը յիշէ Brightman, Liturgies etc., p. LXI, Բոդլէեան գրատան մէկ ձեռագրին մէջ (Huntingt. 444.)

յանուն Յակոբայ, Յովհաննու, Ղուկայ, Կղեմայ, Յուլիոսի, Գր. Նազիանզացւոյ, Փիլոքսենիոսի, Դիոնեսիոսի եւն, որոց մէջ նաեւ մեր այս Պատարագէն «Իգնատիոսի»: Արդ սորի հեղինակն առջեւն ունեցած է երկու Պատարագներ՝ «Կիւրղի» եւ «Գրիգորի»՝ վերը դրուած Նազիանզեան չորս Պատարագներէն, կ'ենթադրենք ասորերէն, յամենայն դէպս գոնէ յունարէն. եւ երկուքէն ալ մէկ մէկ աղօթք առած եւ իւր յօրինածին մէջ հիւսած, ինչպէս իրենց տեղը նշանակած ենք. (տես ծան. 63 եւ 112): Քանի որ վերոյիշեալ Պատարագներն այժմ՝ բաց ի «Աթանասի» անուանածէն, միայն հայերէն կան, գոնէ որչափ մեզի ծանօթ է, «Իգնատիոսի» այս փոխառութիւնք մեծ արժէք ունին ցուցնելու որ ստուգիւ կային այն յունական Պատարագները, եւ հաւանականաբար՝ նաեւ ասորերէնի թարգմանուած, ինչպէս գիտենք Աթանասինը, եւ Գր. «Նազիանզացւոյնը»:¹

Հայերէն օրինակը՝ որուն համեմատ եղած է հրատարակութիւնս, մի միայն է, այսինքն Լիոնինը՝ բայց կրկին ընդօրինակութեանց համեմատ: Վասն զի Հ. Յովսեփայ Վ. Գաթրճեան ձեռքերնիս եղած ընդօրինակութիւնը մինչեւ Յիշատակաց սկիզբը հասնելով կը դադրէր: Մնացեալը քաղցաւ Վենետկոյ Թ. 1145 ձեռագրէն՝ որ նոյնպէս ընդօրինակութիւն է Լիոնեան ձեռագրին: Նաեւ հոս հրապարակաւ պարտք կը համարինք յայտնել մեր շնորհակալութիւնը Մեծ. Հ. Յովհաննու Վրդ. Թորոսեան, որ Վենետկոյ ձեռագրէն օրինակութիւն մը խաւրեց թէ այս այս պակասած մասին եւ թէ յաջորդ Նախասրբելոց Պատարագին:

---

¹ Կը ցաւինք որ կարելի չեղաւ մեզի տեսնել այս «Գր. Նազիանզացւոյ» Պատարագը, որ լոյս տեսած կ'ըսուի միւս Ասեմանեայ Պատարագամատուցաց հաւաքման մէջ (Assem., Codex liturgicus, VII, p. 185ff), որ թերեւս առանց կապակցութեան չէ հայերէն համանուն Պատարագին հետ: «Աթանասի» Պատարագի ասորերէնին համար տես վերը՝ էջ 270:

## Բ.

## ԲՆԱԳԻՐ “ԻԳՆԱՏԻՈՍԻ„ ՊԱՏԱՐԱԳԻՆ

*ՊԱՏԱՐԱԳ ԱՍԱՑԵԱԼ ՍՈՒՐԲ ՀԱՒՐՆ ՄԵՐՈՅ ԻԳՆԱՏԻՈՍԻ ԱՍՏՈՒԱԾԱԶԳԵԱՑ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԱՆՏԻՈՔԱՅ ՓՈԽԵԱԼ ՅԱՍՈՐԻՈՑՆ Ի ՄԵՐՍ, Ի ՓԱՌՍ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵՐՈՅ։*

### ԱՂԱՒԹՔ ՆԱԽ ՔԱՆ ՋՈՂՋՈՅՆՆ[2]

Ա. — *Զկնի պաշտամանց եւ ընթերցմանց մարգարէական եւ առաքելական հրամանացն եւ սուրբ Աւետարանին եւ սուրբ Հաւատոյն եւ քարոզութեան սարկաւագին եւ բերելոյ զընծայսն ի սուրբ սեղանն, քահանայն լուանայ զձայրս մատացն. եւ սկսանի զաղաւթս խորհրդաբար ի ծածուկ եւ ասէ.*

Աստուած Հայր սուրբ, ծնող եւ պատճառ մշտնջենական լուսոյն,[3] եւ պարգեւիչ ամենայն բարեաց եւ տուող ճշմարիտ խաղաղութեան. որ ի վերոյ

Այս Պատարագիս հրատարակութեան համար մի միակ ձեռագիր ունէինք առջեւնիս, այսինքն Լիոնի օրինակն՝ բատ ընդօրինակութեան Մեծ. Հեղինակին Հ. Ց. Գաթրճեան։ Բայց այս օրինակութիւնը թերի կը մնար ճիշդ Յիշատակաց սկիզբն, որ է բուն Պատարագին կէսէն աւելին։ Այս թերին լրացուած է Վիեննայի Թ. 1145 ձեռագրէն՝ որ ընդօրինակութիւն է ճշդիւ յիշեալ Լիոնեան ձեռագրէն։ Ըստ այսմ բնագիրս ճշդիւ նոյն է Լիոնեան ձեռագրին հետ. միայն ուր ուղղել պէտք երեւցաւ՝ դրինք բնագրին մէջ, բայց ձեռագրին ընթերցմունքը նշանակելով հոս համեմատութեանց մէջ։ Որպէս զի այս տարբերութիւնքը զուր տեղ չյաճախեն՝ դիտել կու տանք հոս միանգամ որ ձեռագիրն ամէն տեղ օ կը գրէ, իսկ մենք աւ ուղղեցինք միօրինակութեան համար. նոյնպէս ձեռագիրը միշտ կը գրէ՝ “կեցոյ, տոյ„ եւն, իսկ մենք դրինք՝ “կեցօ, տօ„ եւն։ Առանցմէ զատ ձեռագիրը շատ տեղ համառօտութեամբ կը գրէր, զորոնք միայն ուր պատշաճ էր պահեցինք։ Խորագիրք (Աղաւթք նախ քան զՈղջոյն, Աղաւթք Ողջունի եւն) եւ Բաժանմունք (Ա, Բ, Գ եւն) մերմէ են։ ՀՐՏՐ.

Ա. ‖6 L հրամանացն։ ‖10 L մշտնջենական է լուսոյն։ ‖16 L պաշտօնեա։

[1] Յաջորդ ծանօթութեանց մէջ կը համեմատենք հայերէն թարգմանութիւնս սորի բնագրին լատիներէն թարգմանութեան հետ, որ լոյս տեսած է Ռընոտոյի գործին մէջ։ Համ. Liturgia sancti Ignatii առ Renaudot, Liturgiarum Orientalium Collectio. Ed. secunda, Francofurti 1847, Tomus II, p. 214—224. Ասորի բնագիրն՝ որչափ ինծի ծանօթ է, լոյս տեսած չէ. ըստ այսմ երբ “Ասորին„ կ'ըսենք՝ Ռընոտոյի թարգմանութիւնը հասկընալու է։

Ա. [2] Այս խորագիրը կայ հոս Ասորւոյն մէջ, Ռընոտոյ՝ Primum Oratio ante Pacem. — Իսկ սկզբան քանի մը տող խորագիրը չկայ Ասորւոյն մէջ, ուր անմիջապէս կը սկսի առաջին աղօթքը՝ Deus pater sancte եւն։

[3] Ասորին՝ “Ծնող յաւիտենական Որդւոյն„ կամ զաւակի (genitor propaginis aeternae)։ Հայ թարգմանիչը յայտնապէս ܝܠܕܐ (եալդա) գտած է իւր բնագրին մէջ, որ հոս լուսոյն ալ կ'երեւայ։ — Յաջորդ տարբերութեան մէջ Ասորին

*յանուն Յակոբայ, Յովհաննու, Ղուկայ, Կղեմայ, Յուլիոսի, Գր. Նազիանզացւոյ, Փիլոքսենիոսի, Դիոնեսիոսի եւն, որոնց մէջ նաեւ մեր այս Պատարագէն «Իգնատիոսի»: Արդ ասորի հեղինակն առջեւն ունեցած է երկու Պատարագներ՝ «Ադդէ» եւ «Գրիգորի», վերը դրուած Նազիանզեան չորս Պատարագներէն, կ'ենթադրենք ասորերէն, յամենայն դէպս գոնէ յունարէն. եւ երկուքէն ալ մէկ մէկ աղօթք առած եւ իւր յօրինածին մէջ հիւսած, ինչպէս իրենց տեղը նշանակած ենք.* (*տես ծան.* 63 *եւ* 112)*: Քանի որ վերյիշեալ Պատարագներն այժմ՝ բաց ի «Ադդէի» անուանածէն, միայն հայերէն կան, գոնէ որչափ մեզի ծանօթ է, «Իգնատիոսի» այս փոխառութիւնք մեծ արժէք ունին ցուցնելու որ առուգիւ կային այն յունական Պատարագները, եւ հաւանականաբար՝ նաեւ ասորերէնի թարգմանուած, ինչպէս գիտենք Ադդէինը, եւ Գր. Նազիանզացւոյնը:*[1]

*Հայերէն օրինակը՝ որուն համեմատ եղած է հրատարակութիւնս, մի միայն է, այսինքն Լիոնինը՝ բայց կրկին ընդօրինակութեանց համեմատ: Վասն զի Հ. Յովսէփայ Վ. Գաթրճեան ձեռքերնիս եղած ընդօրինակութիւնը մինչեւ Յիշատակաց սկիզբը հասնելով կը դադրէր: Մնացեալը լրացաւ Վենետկոյ Թ.* 1145 *ձեռագրէն՝ որ նոյնպէս ընդօրինակութիւն է Լիոնեան ձեռագրին: Նաեւ հոս հրապարակաւ պարտք կը համարինք յայտնել մեր շնորհակալութիւնը Մեծ. Հ. Յովհաննու Արք. Թորոսեան, որ Վենետկոյ ձեռագրէն օրինակութիւն մը խաւրեց թէ այս այս պակասած մասին եւ թէ յաջորդ Նախասրբեալց Պատարագին:*

[1] *Կը ցաւինք որ կարելի չեղաւ մեզի տեսնել այս «Գր. Նազիանզացւոյ» Պատարագը, որ լոյս տեսած կ'ըսուի միւս Ասեմանեայ Պատարագամատուցաց հաւաքման մէջ* (Assem., Codex liturgicus, VII, p. 185ff)*, որ թերեւս առանց կապակցութեան չէ հայերէն համանուն Պատարագին հետ: «Աթանասի» Պատարագի ասորերէնին համար տես վերը՝ էջ* 270*:*

## Բ.

## ԲՆԱԳԻՐ "ԻԳՆԱՏԻՈՍԻ„ ՊԱՏԱՐԱԳԻՆ

*ՊԱՏԱՐԱԳ ԱՍԱՑԵԱԼ ՍՈՒՐԲ ՀԱՒՐՆ ՄԵՐՈՅ ԻԳՆԱՏԻՈՍԻ ԱՍՏՈՒԱԾԱԶԳԵԱՑ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԱՆՏԻՈՔԱՑ ՓՈԽԵԱԼ ՅԱՍՈՐԻՈՑՆ Ի ՄԵՐՍ, Ի ՓԱՌՍ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵՐՈՅ։*

### ԱՂԱՒԹՔ ՆԱԽ ՔԱՆ ԶՈՂՋՈՅՆՆ[1]

Ա. — *Զկնի պաշտամանց եւ ընթերցմանց մարգարէական եւ առաքելական հրամանացն եւ սուրբ Աւետարանին եւ սուրբ Հաւատոցն եւ քարոզութեան սարկաւագին եւ բերելոյ զընծայսն ի սուրբ սեղանն, քահանայն լուանայ զձայրս մատացն. եւ սկսանի զաղօթս խորհրդաբար ի ծածուկ եւ ասէ.*

Աստուած Հայր սուրբ, ծնող եւ պատճառ մշտնջենական լուսոյն,[3] եւ պարգեւիչ ամենայն բարեաց եւ տուող ճշմարիտ խաղաղութեան. որ ի վերդ

Այս Պատարագիս հրատարակութեան համար մի միակ ձեռագիր ունէինք առջեւնիս, այսինքն Լիոնի օրինակն՝ բստ ընդօրինակութեան Մեծ. Հեղինակին Հ. Յ. Գաթրճեան։ Բայց այս օրինակութիւնը թերի կը մնար ճիշդ Յիշատակաց սկիզբն, որ է բուն Պատարագին կէսէն աւելին։ Այս թերին լրացուած է Վեննայի Թ. 1145 ձեռագրէն՝ որ ընդօրինակութիւն է ճշդիւ յիշեալ Լիոնեան ձեռագրէն։ Ըստ այսմ բնագիրս ճշդիւ նոյն է Լիոնեան ձեռագրին հետ. միայն ուր ուղղել պէտք երեւցաւ՝ գրինք բնագրին մէջ, բայց ձեռագրին ընթերցմունքը նշանակելով հոս համեմատութեանց մէջ։ Որպէս զի այս տարբերութիւնքը զուր տեղ չյաճախեն՝ դիտել կու տանք հոս միանգամ որ ձեռագիրն ամէն տեղ օ կը գրէ, իսկ մենք ու ուղղեցինք միօրինակութեան համար. նոյնպէս ձեռագիրը միշտ կը գրէ՝ "կեցոյ, անոյ„ եւն, իսկ մենք գրինք՝ "կեցո, անո„ եւն։ Առնցմէ զատ ձեռագիրը շատ տեղ համառօտութեամբ կը գրէր, զորոնք միայն ուր պատշաճ էր պահեցինք։ Խորագիրը (Աղաւթք նախ քան զՈղջոյն, Աղաւթք Ողջունի եւն) եւ Բաժանմունք (Ա, Բ, Գ եւն) մեզմէ են։

ՀՐՏՐ.

Ա. ‖[6] Լ հրամանցն։ ‖[10] Լ մշտնջենական է լուսոյն։ ‖[16] Լ պաշտօնեա։

[1] Յաջորդ ծանօթութեանց մէջ կը համեմատենք հայերէն թարգմանութիւնս ասորի բնագրին լատիներէն թարգմանութեան հետ, որ լոյս տեսած է Ռընոտոյի գործին մէջ։ Հմմտ. Liturgia sancti Ignatii առ Renaudot, Liturgiarum Orientalium Collectio. Ed. secunda, Fraucofurti 1847, Tomus II, p. 214—224. Ասորի բնագիրն՝ որչափ ինծի ծանօթ է, լոյս տեսած չէ. ըստ այսմ երբ "Ասորին„ կ'ըսենք՝ Ռընոտոյի թարգմանութիւնը հասկընալու է։

Ա. [2] Այս խորագիրը կայ հոս Ասորւոյն մէջ, Ռընոտոյ՝ Primum Oratio ante Pacem. — Իսկ սկզբան քանի մը տող խորագիրը չկայ Ասորւոյն մէջ, ուր անմիջապէս կը սկսի առաջին աղօթքը՝ Deus pater sancte եւն։

[3] Ասորին՝ "Ծնող յաւիտենական Որդւոյ„ կամ զաւակի (genitor propaginis aeternae)։ Հայ թարգմանիչը յայտնապէս ܝܠܕܐ ([illegible]) գտած է իւր բնագրին մէջ, որ հոս լուսոյն ալ կ'երեւայ։ — Յաջորդ պարբերութեան մէջ Ասորին

*ես քան զամենայն միտս եւ զզգայութիւնս իմանալեաց եւ զգալեաց, եւ նախախնամութիւն սիրոյ քո ի մեզ ի մեղաւորքս գերազանցէ քան զարժանն մեր, զոր արարեր եւ առնես Որդւովդ քո Յիսուսիւ Քրիստոսիւ Տերամբ մերով.*[4] *որ այնքան արժանաւորեցեր զմեզ մեծի եւ ահաւոր խորհրդոյս լինել սպասաւոր եւ պաշտօնեայ։ Եւ այժմ աղաչեմք զքեզ, Տէր,*[5] *արժանաւորեա զմեզ ամենայն մաքրութեամբ եւ արդարութեամբ ուղղել եւ սրբել յամենայն աղտեղութենէ հոգւոյ եւ մարմնոյ, եւ ողջունել զմիմեանս հոգեւոր կապակցութեամբ եւ ճշմարիտ սիրով, որպէս զի արժանի լիցուք խրախանալ յանձառ երանութիւնսն, եւ հանգիպեսցուք սրբութեամբ Միածնի Որդւոյ քո, ընդ որում քեզ, Հայր Որդւոյ, եւ սուրբ Հոգւոյն [վայելէ] փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ։*

*Քահանայն.* Խաղաղութիւն ընդ ամենեսեան։ — *Ժող.* Եւ ընդ հոգւոյդ քում։

*Սարկ. բարձր.* Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան։[6] — *Ժող.* Արժանի արա զմեզ, Տէր Աստուած մեր։

### ԱՂԱՒԹՔ ՈՂՋՈՒՆԻ

Բ. — *Սարկ. զկնի Ողջունին դարձեալ ասէ բարձր ձայնիւ.* Տեառն ողորմածի զգլուխս ձեր խոնարհեցուցէք։[7] — *Ժող.* Առաջի քո, Տէր։

*Քահ.* Տէր Աստուած մեր, դու ես աւրհնութեան աղբիւր,[8] եւ շնորհող երանութեան ամենեցուն, որք հաւատան ի քեզ եւ ճշմարտութեամբ

‖17 L ուղղել եւ սրբել յամենայն աղտեղութենէ։ ‖21 L չունի "վայելէ", որ անհրաժեշտ է։

կ'ըսէ՝ "տուող հանդարտութեան և խաղաղութեան" (ուստի չունի "ճշմարիտ") բառը։ Այս կարգի գրեթէ աննշան տարբերութիւնք ընդհանրապէս չենք նշանակեր. վասն այսպիսեաց մասն մը յառաջ կու գայ անկէ ալ՝ որ ասորի բուն բնագիրն առջեւնիս չունինք համեմատելու համար, այլ լատիներէն թարգմանութիւն մ'որ դժուարաւ կրնայ ասորւոյն ամէն մանր առանձնայատկութիւնքն մեր առջեւ դնել։

[4] Ամբողջ այս եւ յաջորդ խօսքը քիչ մը տարբեր է Ասորւոյն մէջ՝ "Որ առատ (լտ. magnificus, հայը՝ "գերազանց") ես ի յաստուածային տուրս քո, զորս պարգեւեցեր մեզ մեղաւորաց եւ որդւոց քոց, մինչ զի շնորհեցեր մեզ լինել մատակարար այնոցիկ՝ որպէս արժան եւ իրաւ է" եւն։

[5] "Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր" չունի Ասորին. եւ յաջորդն այսպէս՝ "շնորհեա մեզ զի մեծաւ մաքրութեամբ եւ սրբութեամբ եւ աննենգութեամբ (ազատ լինելով յամենայն նենգութենէ), տացուք միմեանց զողջոյն՝ գրկախառնութեամբք Հոգւոյն սրբոյ (cum amplexibus Spiritus sancti) եւ կապակցութեամբ (in vinculo) ճշմարիտ սիրոյ. որպէս զի կացցուք հոգեւորական միաբանութեամբ եւ պահեալ զխաղաղական համախոհութիւն (unanimitatem pacificam), արժանի եղիցուք երանական խրախութեան, օրհնելով զքեզ Միածնի Որդւոյ քոյ, ընդ որում վայելեն քեզ փառք, պատիւ եւ իշխանութիւն հանդերձ ամենասուրբ Հոգւովդ։" Աղօթքին ծայրը կը կցէ Ասորին՝ "Ժողովուրդն. Ամէն։"

[6] Ռընոտոյ չի նշանակեր "ի համբոյր սրբութեան" բառերը. ժողովրդեան յաջորդ Պատասխանն ալ համառօտիւ կը նշանակէ միայն սա բառով՝ "Ափնիփիան։"

Բ. [7] Այս ալ միայն "Զկնի" բառով նշանակած է Ռընոտոյ։ Նման համառօտութիւնք չենք յիշեր ասկէ ետքը։

[8] Այս տողին տեղ Ասորին երկու ածական միայն ունի հոս "Բարէ, Երանելէ եւ շնորհող օր-

սիրեն զքեզ ։[9] Դու եւ այժմ Տէր, մի՛ հայիր յանարժանութիւնս մեր՝ ստուն-գանելով պատուիրանաց քոց եւ արարչական հրամանի.[10] եւ մի՛ զրկեր զհաւատացեալ ժողովուրդս քո յաստուածային շնորհէ քումմէ. այլ խաղաղութեամբ եւ քաղցրութեամբ առաքեա զշնորհս եւ զաւրհնութիւն ի վերայ ժողովրդեանս՝ որք երկիր պագանեն քեզ ։[11] Նա՛ լից զսոսա լուսով գիտութեան.[12] եւ ընկալ զաղաչանս սոցա՝ զոր մատուցանեն ի խորանի քում, մաքուր տեսութեամբ եւ յատակ հայեցուածովք ցնծալ ի Քրիստոս Յիսուս Տէր մեր,[13] ընդ որում քեզ Հաւր ամենակալի եւ բարերար Հոգւոյդ սրբոյ ճշմարիտ երկրպագութիւն այժմ եւ միշտ ։

[Քահ.] Խաղաղութիւն ամենեսեան ։[14] — Ո՞վ որ պարագրել[15] կարասցէ զքաղցրութեան քո շնորհս. կամ զմտաւ ածել եւ ճառել զանճառելի եւ զանհաս մարդասիրութենէ քումմէ, ո՛ Տէր իմ,[16] որ զքազմամեայ ամբարշտեալքս եւ զանկեալքս ի մեղս զանազանս ընկալար մարդասիրապէս եւ ոչ

Բ· ‖[28] L Տեառն ողորմածին ։ ‖[30] L շնորհօղ ։ ‖[41] L չունի հոս «Քահ․» խորագիրն, որ ինքնին կը հասկցուի․ նոյնպէս մեզմէ են ուրիշ

հնօ-թիւանց ռա ամենեսեան» եւն ։ Չենք տարակուսիր որ լաւագոյն է հայոյն ընթերցուածն, ի մասնաւորի «օրհնօ-թիւանց ազէ-ր» խօսքն. հայ թարգմանն արտահայտէ ܠܗܝܡܢܘܬܐ ܥܡܐ կարդացած է ։

[9] «Ճշմարտութեամբ սիրեն զքեզ» չունի Ասորին ։

[10] «Ստունգանելով» եւն՝ տարբեր է Ասորիէն, որ կ'ըսէ՝ «Եւ մի՛ լան թեր-թեան հաւ-ատրմա-թեան միրայ ատամէ ք» (nec ob defectum fiduciae nostrum coram te)՝ զրկեր զհաւատացեալ ժողովուրդս քո» եւն ։ Լաւագոյն է հայոյն հոս «հաւատացեալ» թարգմանելը քան Ասորւոյն populum tuum fidelem (հաւատարիմ) ըսելը ։ Բնագրին մէջ՝ անկայունի է, գրուած ըլլալու է սորի հոմանշան ܗܝܡܢܘܬܐ բառը, զոր մեր նախնիքն ալ յաճախ՝ նաեւ յանդէպս՝ «հաւատարիմ» կը թարգմանեն ։ Հմմտ. մեր «Արդ. Ասաք.» եւն, տպ. Վիեննա 1896, էջ 172 ։

[11] Ասորին «Ալ քադշա-թեամբ եւ քարերարութեամբ առաքեա շնորհօ-թիւնս քո ի վերայ ժողովոյս (եկեղեցւոյ) երկրպագուաց քոց'» Ասորւոյն թարգմանութիւնը (super congregationem) կ'ենթադրէ ܥܕܬܐ (ժողով, եկեղեցի) բառը, հայոյն ի վերայ «ժողովրդեանս» թարգմանութիւնը՝ ܥܡܐ (ժողովուրդ, ազգ) ։ Բայց կարելի է որ հայ թարգմանը «ժողով» կամ «եկեղեցի» բառն այնպէս թարգմանած ըլլայ ։ Այս կարգի խնդիրք կրնան լուծուիլ միայն երբ ուղղակի սորի բնագրին հետ համեմատել կարելի ըլլայ հայերէն բնագիրը ։

[12] Ասորին՝ «Լից զնոսա շնորհօք եւ լուսով գիտութեան քո» եւն.

[13] Ասորին՝ «Եւ ընկալ զաղաչանս հօտիս քոյ, որպէս զի մաքուր տեսութեամբ (— լտ. in contemplatione pura, հայը «մաքուր տեսութեամբ եւ յատակ հայեցուածովք» ռամկական կրկնաբան-թարգմանութիւնը տարբերէնէ յեղուած գրոց մէջ —) հանդերձ երախայրեօք պտղոց բարեաց (cum primitiis feracibus operum bonorum)՝ խրախճասցուք քեզ ամենայն միանգամայն եւ բարձր աղաղակեսցուք զքեզ եւ զմիածին Որդի քո եւ զՀոգի քո սուրբ ։» Ասոր կը կցէ՝ «Ժողովուրդն. Ամէն ։»

[14] «Խաղաղութիւն ամենեցուն» չկայ Ասորւոյն, եւ՝ կ'ենթադրենք՝ հայ թարգմանչին յաւելուածն է. վասն զի մեր եկեղեցական գրոց մէջ կրկին գրուած ունեցող աղօթքներն այսպէս կը կապուին իրարու ։ Ասորին տար անդ խորագիր մ'ունի թէ «Քահանայն փարայայն,» ինչպէս կը թարգմանեն այս Պատարագաց հայ փոխադրիչք (լտ. Sacerdos elevans vocem) ։

[15] Ասորի բնագրէ եղած հայ թարգմանութեան մը մէջ չէր պատահեր հելլենաբան «պարագրել» (= περιγράφω) բայը ։ Թէ ինչ է հոս սորի բնագիրը, կ'անգիտանանք ։ Ասորւոյ կը թարգմանէ verbis explicare beneficia clementiae tuae, Domine («բանիւք պատմել զբարերարութիւնս գթութեան քոյ, Տէր ։») Ուրիշ պատարագաց մէջ «բանիւ առել» եւ «բանիւ բովանդակել» կը գտնենք. (տես էջ 226, 280 ։)

[16] Ասորին կարճ «Կամ ո՞վ կարասցէ պատմել (enarrare) զառատութիւն սիրոյ քոյ առ

դարչեցար. այլ կացուցեր սպասաւոր աստուածային խորհրդոց քոց:[17] Սրբեա զմեզ զյուլացեալ եւ զմեղանչական ծառայքս քո, հոգւով եւ մարմնով արժանանալ եւ լուսաւորել ընդ կամարարս անուանդ քում սրբոյ, եւ քահանայագործել մաքրապէս, եւ հաղորդել չարչարանաց Միածնի Որդւոյ քո.[18] — Ի ձայն. — Տեառնդ մերոյ եւ փրկչիդ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ: — Ժող. Ամէն:

Սարկ.[19] Ահիւ կացցուք, բարիոք կացցուք զգուշութեամբ: — [Ժող.] Ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ օրհնութեան:

Քահանայն խաչ հանէ ի ժող. Սէրն Աստուծոյ Հաւր եւ Միածնի Որդւոյ նորա եւ սուրբ Հոգւոյն եղիցի ընդ ձեզ: — Ժող. Ամէն. եւ ընդ հոգւոյդ քում:

Սարկ. Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր եւ զզգայարանս: — Դպ. Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ:

Քահ. Խոստովան եղերուք[20] Տեառն ահիւ: — Դպ. Արժան եւ իրաւ:

## ՆԱԽԵՐԳԱՆ

Գն. — [Քահ.] ի ծածուկ.[21] Քեզ վայելէ ճշմարիտ եւ ընտիր երկրպագութիւն եւ բարձրագոյն պատիւ[22] յամենայն արարածոց քոց՝ յիմանալեաց

---

տեղեր ալ փակագծեալ մասերը, ուր այլազգ չենք ծանուցաներ: ‖[51] Լ բուն այսպէս՝ “Սարկ. Ահիւ կացցուք, բարիոք կացցուք զգուշութեամբ. ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ օրհնութեան:„

մաքրէիկ, ով երանեալ, որ զմեզ„ եւն (տես յառաջորդը:)

17 Ասորին՝ “որ զմեզ որք ընդ բազմութեամբ անօրէնութեանց գրաւեալ եւ շղթայիւք մեղաց կապեալ էաք, արժանի արարեր այսպիսի բարձրագոյն եւ մեծի սպասաւորութեան:„ Ըստ այսմ նոյն իմաստ, բայց ոչ նոյն ասութիւններ ունէր հայոյն թարգմանուած սուրբն. կամ՝ Հայն եւ Ասորայինն բնագիրը միեւնոյն գործքին երկու իրարմէ բաւական տարբերող խմբագրութիւններ են, երեւոյթ մ՚որ ամբողջ Պատարագի ամէն մասանց համեմատութեամբն ալ կ՚ապացուցուի:

18 Ասորին չատ տարբեր՝ “Շնորհեա մեզ զի՝ զերծեալք յաղտոյ մեղաց (absteroi a sordibus peccati, անշուշտ այս է հայոյն՝ “զյուլացեալ եւ զմեղանչական ծառայքս քո„ ըսելը), եւ սրբութեամբ կացեալ մարմնով եւ հոգւով՝ արժանի եղիցուք երանութեանն, զոր խոստացար այնոցիկ՝ որ առնեն զկամս քո, (— Հայն՝ “ընդ կամարարս անուանդ քում սրբոյ„ —) եւ լուսաւորութեան եւ պայծառութեան Հոգւոյդ քոյ սրբոյ, եւ գործեալ քահանայագործութեան (լատ. functione sacerdotii) Միածնի Որդւոյ քոյ, որով եւ ընդ որում վայելէ քեզ փառք, պատիւ եւ տէրութիւն հանդերձ Հոգւովդ քով սրբով:„

19 Այս եւ յաջորդ Պատասխանիքն համառօտութեամբ միայն նշանակած է Ռընոտոյ: Հայոյն մէջ մէկ երկու բան փոխուած կ՚երեւայ մեր սովորական Պատարագին համեմատ: “Քահանայն խաչ հանէ ի ժող.„ խորագիրը չենք գտներ Ասորւոյն քով: Այս մասերը քիչ շատ տարբերութեամբ նոյն են միւս սուրբ Պատարագաց մէջն ալ (հմմտ. օրինակի համար “Քսեստոսի„ Պատարագն Renaudot, II, p. 135, եւ այլուր:)

20 Ռընոտոյ կը թարգմանէ Gratias agamus Deo (“Գոհացարուք զՏէրն:„) Հայոյն “Խոստովան եղերուք,„ ըսելն ալ ուրիշ ասորերէն բառ մը չ՚ենթադրեր. ասորերէն [illegible] բայն երկու նշանակութիւնն ալ ունի: Սակայն լաւագոյն կ՚ըլլար հոս “եւ գոհացարուք„ թարգմանել, ինչպէս գրեթէ ամէն Պատարագներն այստեղ ունին:

21 Ասորին՝ “Քահանայն խոնարհի„ եւ այսպէս կ՚ըսէ աղօթքը:

22 Ասորին՝ “Ճշմարիտ քեզ վայելէ երկրպագութիւն հանդերձ պատուով, գովութեամբ

եւ ի զգալեաց եւ Միածնի Որդւոյ քո եւ սուրբ Հոգւոյ։ — *Բարձր.* Դու ես Տէր, որ ի բարձրութեանց խնկութենէ եւ յանբաւ եւ յանհաս մեծութենէ, առաւելապէս ի բարձանց պատուիս եւ գովիս, անպարագրելի Բանդ Աստուած, անդադար փառաբանութեամբ ի մաքուր զաւրաց, ի սուրբ հրեշտակաց, անլռելի ձայնիւ, ի բանս քաղցրս, յանմարմին բերանոց, եւ յաննիւթ լեզուաց, հոգեւոր աղաղակաւ, ի սերոբէից եւ ի քերոբէից, որք գոչեն եւ աղաղակեն մի առ մի անհանգիստ բարբառով, երգեն եւ ասեն։[23] — *Ժողովուրդն.* Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զաւրութեանց. լի են։

ԿԱՆՈՆ

Դ. — *Քահ. ծածուկ.*[24] Սուրբ ես իսկապէս[25] Աստուած Հայր եւ Միածին Որդիդ քո Տէր մեր Յիսուս Քրիստոս եւ Հոգիդ սուրբ. որ նմանապէս երկնաւորացն՝ զմարդասիրութիւն քո ցուցեր մեզ.[26] եւ այնքան սիրեցեր զմեզ, մինչեւ զՄիածին Որդի քո զէակակից եւ զփառակից[27] առաքեցեր ի փրկել զմեզ։ Որ եկն եւ մարմնացաւ ի սրբոյ կուսէն Մարիամայ, եւ որ ի վեր քան զամենայն զբանս եւ զխորհուրդս. եղեւ եւ որդի մարդոյ՝ որպէս ինքն կամեցաւ.[28] եւ զամենայն ինչ զմերս կրեաց՝ բայց ի մեղաց.[29] եւ զա-

---

Գ. ‖63 L "որ բարձրութեանց խնկութենէ" եւն։
Դ. ‖75 "Ի փրկել զմեզ" մենք ուղղեցինք։ Ընդօրինակութեան մէջ (որ

եւ փառաբանութեամբ մատուցանել յամենայն արարածոց քոց բանաւորաց (— Հայը՝ "յիմանալեաց եւ ի զգալեաց" —), միանգամայն եւ Միածնի Որդւոյ քում" եւն։

[23] Աւգերին՝ այսպէս ունի Աղօթքս. "Դու ես՝ որ ի բարձրագոյն էութեանց (a substantiis sublimibus) եւ յանմարմնոց, մեծաւ վայելչութեամբ (decore summo) եւ յաղթանակաւ ի բարձունս՝ պատուիս, գովիս եւ մշտնջենաւոր օրհնութեամբ փառաբանիս (glorificatione perpetua celebraris, այս է Հայուն "անդադար փառաբանութեամբ" ըսածը), մաքուր եւ սուրբ երգով, քաղցր եւ հեշտական քնարաւ (citharis suavibus et jucundis, Հայն՝ "ի բանս քաղցրս"), յաղթողական փառաբանութեամբ եւ օրհնութեամբ, անդադար տօնախմբութեամբ, եւ անդադար երգով, յանմարմին բերանոց, յաննիւթ լեզուաց (per linguas non carneas), մեծազօր աղաղակաւք հոգեղինաց (per praeconia spiritualium), հաւասար օրհներգութեամբ հրեղինաց (per aequalem concentum igneorum), սուրբ ձայնիւ Աթոռոց, մեծաւ գոչմամբ Քերովբէից եւ մաքուր սրբասացութեամբք Սերովբէից, որ ահարկումամբ (terribiliter) ծափս հարկանեն թեւովք (alis plaudunt), թուչին երեքսրբեան սրբասացութեամբ, աղաղակեն, գոչեն եւ ասեն։" — Աւգերին շատ ճոխ է քան այսմ. ընհականէն կը պակսի Աւգերւոյն մէջ "անպարագրելի Բանդ Աստուած" կոչականը։ Չենք կարծեր որ Հայ թարգմանիչը համառօտած ըլլայ աղօթքս, հապա այսպէս եղած ըլլալու է իւր բնագրին մէջն ալ։

[24] Հոս ալ Աւգերին՝ "Քահանայն խոնարհէ."

[25] "Իսկապէս" չունի Աւգերին, որ "սուրբ" բառն ալ երեք անձանց վրայ կը կրկնէ ըսելով՝ "Զի սուրբ ես Աստուած Հայր, սուրբ եւ Միածին Որդի քո, սուրբ եւ Հոգի քո սուրբ" եւն։

[26] Յաջող թարգմանութիւն մը չ'երեւար այս տողը. իսկ Աւգերինն է՝ "որ արարեր զմեզ նման երկնաւորաց վասն սիրոյ քո առ մարդիկ։" Հայուն ընթերցուածին ծագումը կրնար անշուշտ մեկնուիլ տարբերէն բնագրին ընթերցուածովը՝ եթէ ծանօթ ըլլար մեզ։

[27] Աւգերին մէկ բառ մ'ունի, այսինքն՝ "էակիցդ" կամ "համագոյակից" (Filium tuum tibi consubstantialem)։

[28] Աւգերին՝ "Որ մարմնացաւ անճառելապէս (ineffabiliter) եւ եղեւ մարդ՝ որպէս եւ կամեցաւ եւ ծանեաւ." (voluit et novit.) Այս "ծանեաւ" կարծենք ուղիղ չէ հոս եւ Որընտոյի տարբեր բնագիրն հոս սխալ գրչութիւն մ'ունենալու է։ Հայուն "Որ էր եւ մարմնացաւ", չենք

*մենայն տնաւրէնութիւն ներմարդեղութեան փրկաւրն կատարեաց գալստեամբն իւրով։*[30] *Եւ ի գիշերին յայնմ պաքայի՝ կամեցաւ կատարել զվասն կենաց եւ փրկութեան աշխարհի զմահն կենարար՝ որ վասն մեր։*[31] *Եւ առ զհացն ի սուրբ եւ յարարչագործ*[32] *ի ձեռս իւր, աւրհնեաց,*[33] *եբեկ եւ ետ յաշակերտսն ի սուրբ յառաքեալսն եւ ասէ.*

*Եւ. — [Ի] ձայն. Առէք կերայք ի սմանէ. այս է մարմին իմ, որ ձեզ եւ բազմաց հաւատացելոց բաշխի*[34] *ի թողութիւն մեղաց եւ ի կեանսն յաւիտենականս։*

*Եւ ըստ նմին աւրինակի առ զգինին ի սուրբ ձեռս իւր, աւրհնեաց, էարբ,*[35] *եւ ետ յաշակերտսն իւր եւ ասէ.*

*Ի ձայն քահանայն. Առէք արբէք ի սմանէ ամենեքեանդ. այս է արիւն իմ, զոր տամ վասն կենաց աշխարհի. եւ ձեզ բազմաց հաւատացելոց հեղում ի թողութիւն մեղաց եւ ի կեանսն յաւիտենականս։ — Ժող. Ամէն։*

*Զ. — Քահ. Զայս արարէք ի յիշատակ իմոց չարչարանաց.*[36] *յամենայն ժամ՝ յորժամ ուտէք զհացս զայս եւ զբաժակս ըմպիցէք՝ զմահ իմ*

---

այս կողմերն շատ համառօտագրութեամբ է)՝ գրուած է՝ "...ի փրկ. մեզ։" ‖[78] L "զամենայն տնօրէնութիւն ներմարդեղ[illegible]։"

կասկածիր՝ լաւագոյն ընթերցուածն է՝ ասորերէնի ոգւոյն համեմատ ըլլալով. նաեւ "եւ որ ի վեր քան զամենայն զբանս եւ զխորհուրդս" խօսքը ճշգիւ ասորւոյն համեմատ ըլլալու է, եւ թերեւս այսպիսի ասութիւնն մըն էր՝ զոր Ուռնոսոյ մէկ բառով (ineffabiliter) թարգմանած է։

[29] Ուռնոսոյի թարգմանութեան համեմատ՝ այս կարւոյ խօսքին տեղ Ասորւոյն մէջն է այսպէս՝ "Եւ զամենայն՝ որ ինչ էր մեր, բաց ի մեղաց, վասն մեր կատարեաց։" Այս է "[illegible]" ըստ խօսքին ճազաղ ասորերէն առացուածը։ Ընդհանրապէս կը տեսնուի որ թարգմանն ասորի ազգատ լեզուի կարերէն ինք զինք զերծ պահել գիտէ. նոյնը կը ցուցընէ նաեւ յաջորդ հելլենաբան "ներմարդեղութիւն" բառը, ուր ասորին անշուշտ պարզ [illegible] կ'ընթեռնուր։ Ուռնոսոյ չունի այս բառը։

[30] Ըստ Ուռնոսոյի՝ նախընթաց "զամենայն ինչ զմեր կրեաց" խօսքով աղօթքը կ'աւարտի։ Անկէ ետքն եկածը նոր դրուագ է աղօթքիս Ասորերէնին մէջ, զոր քահանայն "[illegible]" կ'ըսէ, եւ կրկին նախադասութեամբք կը սկսի այսպէս. "Որ զամենայն փրկական տնօրէնութիւն վասն մեր կատարեաց, եւ չարչարանօք իւրովք որբովք եցոյց զճշմարտութիւն գալստեան իւրոյ մարմնով։"

[31] Նոյնպէս առանձնայատուկ առութիւն Հայոյն։ Ասորին՝ "Եւ ի գիշերին պաքայի, յորում մատնէր վասն կենաց եւ փրկութեան աշխարհի, էառ հաց" եւն։

[32] "Արարչագործ" չունի Ասորին. եւ կրնայ կասկածուիլ որ "Կիւրղի" Պատարագին (տես էջ 260) ազդեցութեամբ գրուած ըլլայ Հայ թարգմանչէն։

[33] Ասորին՝ "[illegible]" Բնագիրն անշուշտ [illegible] էր, զոր կրնար թերեւս Հայն "աւրհնեաց" ալ թարգմանել. սակայն կարելի է որ "աւրհնեաց"ն միւս պատարագներուն մէջ այսպէսոյ համար յաճախ գործածուած ըլլալով՝ անոնց ազդեցութեամբը գրուած ըլլայ։

[34] "Բաշխի" եւն՝ յայտնապէս ուրիշ Պատարագաց համեմատ գրուած է հոս։ Ասորին է՝ "[illegible] ի թողութիւն մեղաց եւ ի կեանս յաւիտենականս." (quod vos et multos praeparat եւն։) Նոյնպէս՝ բաժակի սրբագործութեան վերջը։ — Ասոր կից "[illegible]. Ամէն։"

[35] Հոս [illegible] փոփոխութիւն մ'եղած է կամ արդէն թարգմանչէն կամ գոնէ գրիչներէն, գուցէ ձգելով [illegible] յիշատակութիւնը։ Ասորին է՝ "Նմանապէս եւ զբաժակն կենաց, [illegible], արբեաց զնա (Հայը՝ "օրհնեաց") եւ ետ" եւն. (չկայ "էարբ")։ — "Եւ ձեզ եւ բազմաց հաւատացելոց հեղում" յատուկ է Հայոյն։ Ասորին տես վերը՝ Ծան. 34։

[36] Ասորին պարզապէս՝ "ի յիշատակ իմ։"

յիշատակեցէք եւ զյարութիւն իմ խոստովանեսջիք մինչեւ ի միւսանգամ գալուստն իմ։

Ժողովուրդն ասէն.[37] Զմահ քո, Տէր, յիշատակեմք. եւ զյարութիւն քո խոստովանիմք. եւ մնամք գալստեանդ քո։

Քահանայն ի ծածուկ ասէ.[38] Եւ իբրեւ այսպիսի մտաւք յիշատակեմք զՏեառն մերոյ զամենայն տնաւրէնութիւն՝ որ վասն մեր եղեւն եւ կատարեցաւն, զծնունդն փրկական, զմկրտութիւնն աստուածային, զԹաղումն կենաբար, զյարութիւնն լուսափայլ,[39] զվերանալն առ Հայր զուարախարար, եւ զնստելն ընդ աջմէ մեծութեան քո ի բարձունս։[40] Դարձեալ եւ զերկրորդ գալուստ դորա զահաւոր եւ զսոսկալի, յորժամ փառաւք հայրենի ծագի եւ փայլէ ահաւորապէս իբրեւ զարեգակն, եւ նստի ի դատել զկենդանիս եւ զմեռեալս։[41] Յորժամ հրեշտակք երկչին[42] եւ հրեշտակապետք դողան. իշխանութիւնք սարսափին. եւ դասք երկնաւորաց զարմանան. եւ ամենայն որդիք մարդկան ահիւ մեծաւ տագնապին, յորժամ ահաւոր դատաստան քո պատրաստի եւ դպրութիւնք բանան.[43] եւ կայծակունք բորբոքեալ, եւ բոց հրոյ վառեալ, եւ հուր[44] ոչ շիջանի, եւ աղաչանք եւ աղաւթք եւ պաղատանք

---

Զ. ||93 L "զյարութիւն իմ խոստովանիմք։" ||107 L "դպրութիւնք

— Ասորի բնագրին հետեւութիւնն է՝ "յամենայն ժամ, յորժամ" առութեան կերպը փոխանակ սովորական առութեան՝ "քանիցս անգամ եթէ" եւն։

37 Ամբողջ տողը համառօտութեամբ երկու առաջին բառերով նշանակած է Ռընոտոյ։

38 Դարձեալ "[illegible]" կ'ըսէ Ասորին։ Յաջորդ աղօթքին մէջ Հայն երրորդ դիմօք թարգմանած է, մինչդեռ Ասորին երկրորդ դիմօք է՝ առ Քրիստոս ուղղուած, ուստի կը սկսի՝ "Արդ մեք յիշատակեմք [illegible]՝ որ ընդ [illegible] տնօրինաբար [illegible] կատարեցան, զփրկական ծնունդ [illegible]" եւն եւն։

39 "Լուսափայլ" յատուկ է Հայոյն, որ՝ եթէ բնագրէն շեղում մը չէ, համապատասխանելու է [illegible] (լուսաւոր) բառին։ Ասորին հոս՝ ըստ Ռընոտոյի՝ "[illegible]" կ'ըսէ (resurrectionem tuam dominicam)։

40 Ասորին՝ "զնստելն քո ընդ աջմէ [illegible] Աստուծոյ եւ Հօր։"

41 "Ծագի" (ասորերէն [illegible]) այս իմաստով սովորական առութիւն է ասորերէնէ եղած թարգմանութեանց. (հմմտ. "Վարդապ. Առաջ." Վիեննա 1896, էջ 300, 301—2 եւն, եւս մանաւանդ էջ 172։) Կասկածելի է "[illegible]" բառը, որ Ասորերէնին մէջ չկայ (Ռընոտոյ exoriens cum gloria)։ Մտադրութեան արժանի է որ ճիշդ այս բառն աւելցուցած է ասորի առաքելական կանոնաց հայ խմբագրիչն ալ գրելով "հայրական փառօք" (տես "Վարդ. Առաջ." էջ 3(2), որ նոյնպէս ասորի բնագրէն չի հաստատուիր։ — "Փայլէ ահաւորապէս իբրեւ զարեգակն" կրնայ շատ լաւ հայոյն գործածած ասորի բնագրին մէջ եղած ըլլալ։ Ռընոտոյ կ'ըսէ՝ terribiliterque conspiciendum te praebens, այսինքն "ահաւորապէս երեւնալով"։ Ընդհակառակը չենք տարակուսիր որ հարազատ (եւ ասորւոյն ոգւոյն համեմատ) է՝ "եւ [illegible] ի դատել" եւն, թէպէտ Ռընոտոյ այս բառն ալ չունի։

42 Ասորին կ'աւելցընէ՝ "ի պայծառութենէ դատաստանի քո," նոյնպէս քիչ մ'եւսքը՝ "(իշխանութիւնք սարսափին), [illegible], եւ դասք երկնաւորաց [illegible]" (Հ. "զարմանան։")

43 Այս նախադասութիւնք, մանաւանդ այլուստ շատ ծանօթ "դպրութիւնք բանան" խօսքը, թերեւս կասկածելի են, բոլորովին տարբեր ըլլալով Ասորին ալ, որ կ'ըսէ՝ "Յայնժամ ամենայն մարդիկ կացեալ ցաւով, սպասեն ահաւոր եւ հզօր դատաստանի քում, յորժամ անդի պատճառական է արդարութեան եւ շնորհք ողորմութիւն ինչ չշնորհին. յորժամ կայծակունք բորբոքեալ" (լա. carbones ardentes) եւն։

44 Ասորին՝ "[illegible] շիջանելոյ։"

ամենեցուն հատանին։[45] Յայնժամ խնայեա Տէր ի մեզ, եւ հովանի լեր աջով քով սրբով եւ մի մտաներ ի դատաստան ընդ մեզ ճշմարտութեամբ քով,[46] եւ մի ընդ միտ ածեր զգայթակղութիւնս մեր եւ զսխալանս. եւ մի տար ի փորձութիւն. զի մի լիցուք մերկք[47] ի շնորհաց քոց եւ աւտարք ի ժառանգութենէ քումմէ. եւ մի ի տանջանս դառնագոյնս մատներ զմեզ, ուր որդն՝ անքուն եւ կրճել ատամանցն՝ անդադար.[48] եւ մի ընդ խաչահանուսն եւ աստուածասպանսն... եւ ընդ ամբարիշտսն դասել. մի հաղորդս անաւրինացն լինել, եւ մի մոռանար զմեզ եւ կորուսաներ ընդ այնոսիկ՝ որք ոչ ճանաչեն եւ ոչ գիտեն զքեզ եւ ոչ հաւատացին գալստեան Միածնի Որդւոյ քո։[49] Այլ ծագեա ի մեզ զփրկութեան քո շնորհ. քաւեա զմեզ մարդասիրութեամբ քո. առաքեա ի մեզ զմեծ զողորմութիւն քո. կացո զմեզ ընդ աջմէ քումմէ. եւ յիշեա ողորմութեամբ քո. եւ փրկեա ըստ բազում գթութեան եւ մարդասէր շնորհի քո։ Աւգնեա մեզ խնամակալութեամբ քո, եւ խառնեա ի մաքուր հաւտս քո. եւ համարեա ի դասս սիրելեաց քոց. եւ արժանի արա յարքայութեան քում ուրախանալ եւ բերկրել յառագաստ քո. եւ ընդ արդարսն եւ ճշմարիտսն ուրհնել զքեզ Հայր ընդ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ։

---

բանին։» ‖109 «...եւ պաղատանք ամենեցուն հատանէ։» ‖115 L «խաչահանուսն եւ աստուածասպանսն ΠΟΚ» (այս յունարէն տառերը կարմրագիր են, եւ ունէ զատ «ուրիշ չորս զոյգ գրեր կամ մենագրութիւններ յունարէն.» զորանք Հ. Յովսէփ իւր ընդօրինակութեան մէջ աւելորդ համարած է օրինակել։) ‖122 Ընդօրինակութեան մէջ «ի հաւտս քո» (փխ. «ի հաւտս») կ'երեւայ։

45 Ասորին չորս նախադասութեամբ կը բացատրէ՝ «յորժամ աղաչանք մերժին, եւ խնդրուածք ոչ ընդունին, աղօթք ոչ լսին եւ պաղատանք ամենեցուն հատանին» (obsecrationes cujuscumque praecidentur.) Թէ հայերն «հատանին» ըսելն եւ թէ Ռընոտոյի praecidentur թարգմանութիւնը կը ցուցընէ որ հոս բնագրին մէջ [illegible] (կտրել, հատանել) բայը գործածուած էր։

46 «Ճշմարտութեամբ քով» չունի ասորին. իսկ յաջորդն՝ «եւ մի ընդ միտ ածեր զանօրէնութիւնս մեր, եւ մի՛ ի [illegible] կոչեր զմեզ եւ կացուցաներ.» (non ad examen strictum voces nos etc.)։ Վերջին խօսքիս տեղն է հայն «[illegible]» բառն, որ հոս չի յարմարիր եւ աւետարանական աղօթքին ազդեցութեամբը գրուած ըլլալու է։

47 Ասորին՝ «[illegible] (exules) ի շնորհաց» ունի։ Սակայն հայերն առած բացատրութեան կերպն ալ շատ լաւ կը յարմարի ասորի լեզուին. եւ կարելի է որ իւր բնագրին մէջ այնպէս եղած ըլլայ։

48 Ասոր. «մի՛ առ. [illegible]՝ որ [illegible], ընդ ամբարիշտս առաքեր զմեզ. մի՛ դասեսցուք ի կողման այնոցիկ՝ որ ի խաչ հանին. մի՛ համարեսցուք ընդ անաւրէնս. մի՛ լիցուք հաղորդս ամբարշտաց. եւ մի՛ անկցուք ի տանջանս եւ ի [illegible]» ունի։ Իսկ հայ բնագրին մէջ «աստուածասպանսն» բառէն ետքը գրուած ΠΟΚ եւ ուրիշ յունական տառերը՝ համապատասխանող չունին գոնէ Ռընոտոյի թարգմանութեան մէջ։

49 «Եւ ոչ գիտեն զքեզ» ունի. Ասորին միայն՝ «եւ ոչ սիրեցին զքեզ։» — Աղօթքին մնացեալ մասն նոյն է Ասորւոյն հետ, միայն հայը մէկ երկու վերադիրներ աւելի ունենալով կը ճոխանայ, որ սովորական երեւոյթ է ասորերէնէ եղած գրեթէ ամէն հայ թարգմանութեանց։ Վերջը (փխ. «Եւ ընդ արդարսն» ունի) այսպէս ունի Ասորին՝ «Եւ վասն այսորիկ եկեղեցի քո եւ հօտ քո աղաչէ զքեզ, եւ քեւ եւ ընդ քեզ զՀայր քո, ասելով — [illegible] — Ողորմեաց» ունի։

Ժողո. Ողորմեաց մեզ Հայր ամեն[ակալ։]

Քահ. Եւ մեք, Տէր, ծառայք մեղաւորք եւ նուաստք՝ գոհանամք զքէն եւ խոստովանիմք զշնորհս քո։

Ժող. Աւրհնեալ ես, Տէր, աւրհնեմք զքեզ, գովեմք զքեզ եւ աղաչեմք զքեզ Աստուած մեր։[50]

ԿՈՉՈՒՄՆ

Ե. — Քահանայն ի ծածուկ.[51] Ողորմեաց մեզ, Աստուած Հայր ամենակալ. եւ առաքեա ի մեզ զՀոգիդ քո սուրբ՝ զկենդանարար, զփառակից եւ զէակից Միածնի Որդւոյ քո, զբաշխող յամենայն ժամ պարգեւաց աստուածայնոց. զի կնքեալ[53] արասցէ զհացս զայս † պատուական մարմին Քրիստոսի քո։ — Սրկ. Ամէն։[54] — Քահ. Լուր մեզ Տէր. լուր մեզ Աստուած եւ ողորմեա։

Ժողովուրդն ասեն երիցս զայս երգ. Կիրիլէիսաւն. կիրիլէիսաւն. կիրիլէիսաւն. որ է՝ Տէր ողորմեա։[55]

Քահ. Արա զհացս † մարմին սուրբ, մարմին պարգեւիչ անապականութեան, մարմին սրբիչ եւ քաւիչ, մարմին Տեառն Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ ի թողութիւն մեղաց եւ ի կեանս յաւիտենականս, որք հաւատով մերձենան ի սա։[56]

Քահ. Եւ զբաժակս զայս † արիւն անբիծ սուրբ, արիւն կենդանի եւ կենդանարար, արիւն սրբացուցիչ, արիւն Տեառն Աստուծոյ եւ Փրկչին մերոյ

---

Է. ‖[139] L "որ է Տէր ողորմեան։"

[50] Ուրհոյայ այս մասերը համառօտութեամբ նշանակած է։ Իսկ այստեղ կը յաւելու՝ "Մոր-յաաաէն. Զինուրդ ահաւոր է այս ժամ, եւն։"

[51] Աս խորագրին տեղ ուրիշ մ'ունի Ասորին, այսինքն՝ "Քահանայն առի զկոչումն Հոգւոյն սրբոյ։"

[52] Ասորին՝ "(զՀոգիդ քո սուրբ), որ ընդդանայն, եւ է Աստուած ի մէջ ... ընդդանայն, եւ համագոյակից քեզ եւ Միածնի Որդւոյ քոյ. յամենայն ժամ բաշխէ զպարգեւս, ... որ ... որ պահէ զկեանս այնոցիկ որ կեանն (Հ. "կենդանարար") եւ կատարիչ է սրբութեան սրբոց. զի" եւն։

[53] "Կնքեալ" եւն. տասր տեղ Ուրհոյայ illapsu suo (իջմամբ իւրով։) Անշուշտ այս վերջին ընթերցումը լաւագոյն կ'երեւայ. բայց ամբողջ խօսքը, կարծենք, աւելի հարազատ կը հնչէ հայոյն քով քան Ասորւոյն բառ Ուրհոյայի, որ ունի հոս "զի իջմամբ իւրով սրբեսցէ զհացս խորհրդոյ զայս, եւ զի ... յ...։" Կոչման բանաձեւին մէջ այս վերջին մաղթանքը բոլորովին անդէպ է։

[54] "Մոր... Ամէն" չունի Ասորին. բայց կրնայ ենթադրուիլ։ Անկէ ետքը՝ "Քհ. Լուր ինձ Տէր։"

[55] Ասորւոյն մէջն ալ կայ հոս երեք "Տէր ողորմեա" յունարէն։ Հայ թարգմանն ի վերջոյ մեկներ է յունարէն տուութիւնը։

[56] Հայերէնը քիչ մը տարբեր է այս կարեւոր կտորին մէջ Ասորիէն որ կ'ըսէ՝ "Քհ. ... Եւ ինքն իջեալ եւ սրբագործեալ (santificans), արասցէ զհացս զայս մարմին սուրբ եւ սրբարար, մարմին սրբիչ եւ քաւիչ, մարմին պարգեւիչ անապականութեան, մարմին Տեառն Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, ի թողութիւն մեղաց եւ ի կեանս յաւիտենականս՝ որոց ընդունիցին։ Ժող. Ամէն։"

Յիսուսի Քրիստոսի՝ ի թողութիւն մեղաց եւ ի կեանս յաւիտենից։[57] — Ժող. Ամէն։

Քահանայն երիցս տեառնագրէ ի վերայ հացին եւ բաժակին. եւ ծածկէ կտաւով, եւ երկրպագէ սրբոյ սեղանոյն, եւ խոնարհի հաւասար սեղանոյն, եւ ի ծածուկ աղաւթէ արտաասուք։[58]

### ՑԻՇԱՏԱԿՔ

Ը· — Խնդրեմք եւ աղաչեմք զքեզ, Տէր, որ զսուրբ եւ զճշմարիտ խորհուրդս զայս շնորհեցեր մեզ ի լուսաւորութիւն եւ յարթնութիւն հոգւոյ եւ մարմնոյ յառողջութիւն. եւ յորդեգրութիւն Հաւրդ երկնաւորի եւ ի ժառանգութիւն երկնից արքայութեանդ, ի թողութիւն մեղաց արժանապէս հաղորդելոյ։[59] — Վերածայնէ քահանայն. — Զի քեզ վայելէ գոհութիւն եւ երկրպագութիւն՝ ընդ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ։[60]

Քահ. ի ծածուկ.[61] Առաջի քո Տէր զգենումս զայս յիշատակեմք համապաղաւր. լցաւ կատարեցաւ ի ձեռն Հոգւոյն սրբոյ. զի սովաւ պահեսցես

Ը· ‖[152] Ճիշդ այս աղօթքին սկիզբէն մինչեւ Պատարագիս վերջը թերի էր Հ. Յովսէփայ ընդօրինակութեան մէջ։ Այս թերին լրացուեցաւ Վենետկոյ ձեռագրէն զոր Մեծ. Վ. Հ. Յովհաննէս Վ. Թորոսեան բարեհաճեցաւ խաւրել մեզ։ Վենետկոյ ձեռագրին թիւն է՝ Թ. 1145, (Թղ. 131ա, էջին կիսէն։) Ձեռագրին կողին վրայ նշանակուած է՝ "Լիոնեան՝ 12, խորհրդատետր." եւ արդեամբք Լիոնի օրինակէն է։ Ուստի այս մասին համար ալ կ'արժէ այն ամէնը՝ զոր ըսինք նախընթաց մասին հրատարակութեանս նկատմամբ։ ‖[156] L (կամ

[57] Հոս տարբերութիւնը միայն այն է որ Ասորին մէկ երկու բառի կարգը տարբեր ունի, այսպէս՝ "...արիւն կենդանի եւ կենդանարար, արիւն մաքուր (Հ. "անբիծ") եւ սուրբ, արիւն փրկիչ եւ սրբացուցիչ... ի կեանս յաւիտենականս՝ որոց ընդունինն։"

[58] Երկար խրատագիրս չկայ Ռընոտոյի քով։

[59] Բաւական տարբեր է ամբողջ այս աղօթից գրուածն Ասորւոյն մէջ, որ ըստ Ռընոտոյի ունի այսպէս՝ "Արդ մեք արժանի եղեալք մասնակցութեան սրբոց խորհրդոցս այսոցիկ եւ գիտութեամբ ճշմարտութեան լուսաւորեալ ունելով զայս միտս, խնդրեմք եւ աղաչեմք, զի խորհուրդքս այսոքիկ որ առաջի եդեալ են, լիցին մեզ եւ որոց ընդունին զսոսա, ի զարթուցումն արթնութեան հոգւոյ, յառողջութիւն մարմնոյ, ի կցորդութիւն ճշմարիտ որդեգրութեան, ի հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ, ի ժառանգութիւն արքայութեան երկնից, ի թողութիւն յանցանաց եւ մեղաց. զի քեզ վայելէ" եւն։

[60] Ասորին չունի "Վերաձայնէ Քհ." խրատագիրը. վերջաբանութիւնն ալ այսպէս ունի՝ "Զի քեզ վայելէ բարութիւն եւ մարդասիրութիւն. եւ քեզ փառս մատուցանեմք եւ գոհութիւն, միանգամայն եւ Միածնի Որդւոյ քում, եւն։ Ժող. Ամէն։

[61] Ասորին՝ "Քհ. խոնարհի։" Աղօթքին սկիզբն ալ այսպէս՝ "Առաջի քո, Տէր, աղաչեմք այսոր խորհրդովս՝ որ լցաւ կատարեցաւ ի ձեռն Հոգւոյն սրբոյ, վասն կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցւոյ քոյ սրբոյ, զի պահեսցի հաստատուն եւ անխախտելի, եւ մի՛ գրունք դժոխոց յաղթահարեսցեն զնա. եւ վասն սրբոց հարցն մերոց եւ առաջնորդաց մերոց, մանաւանդ վասն երանելեաց՝ Պատրիարքին մերոյ Ա. Ա., եւ եպիսկոպոսին մերոյ Ա. Ա. համդերձ այլովք ուղղափառ եպիսկոպոսաւք։ Պահեա զնոսա ի չար յարձակմանց եւ ի վնասակար արօտից (ab incursionibus malis et a pascuis perniciosis) եւն։ Այս վերջին տողն է որ հայերէնին մէջ շատ տարբեր կերպով բացատրուած է՝ աղաչելով որ ազատէ "ի գայլոց գահավիժողաց զեկեղեցի" եւն։ — Աղօթքին մնացած մասը համաձայն է Ասորւոյն, եթէ մէկ երկու վերադրաց յաւելումը կամ պակասը չհաշուենք։

*հաստատուն եւ անխախտելի յամենայն արկածից բանսարկուին զկաթուղիկէ եկեղեցի քո սուրբ. եւ զնախնի հայրն մեր զսրբութեամբ եւ ամբծութեամբ կենցաղավարեալն, եւ զոր այժմս հովուէ, պահեա՛ ի չար ներհակաց եւ յանաստուած գայլոց գահավիժողաց զեկեղեցի եւ զհաւատս քո։ Նոյ զքահանայս եւ զսարկաւագունս եւ զամենայն դասս կղերիկոսաց պահեա անարատ յիւրաքանչիւր կոչումն՝ յոր կոչեցան, անբամբասս եւ անխոտելիս ի պատուիրանաց քոց։ Յիշեա՛ տէր եւ զաղքատութիւնս իմ. եւ մի կորուսաներ զիս ըստ անաւրէնութեան իմոյ. եւ ցոյց յիս զբարերար մարդասիրութիւն քո, եւ փրկեա զիս ըստ բազում ողորմութեան քո. որպէս զի ի ձեռն ամենայն բարեաց՝ զոր արարեր եւ առնես՝ փառաւորեցից զքեզ յամենայն աւուրս կենաց իմոց։ Նոյ պահեա մաքուր եւ անաղտ եւ պարզ յամենայն ցնորից եւ յանմաքուր խորհրդոց.[62] որպէս զի սպասաւորեցից արժաբար եւ զգուշութեամբ մեծի եւ ահաւոր խորհրդոյս՝ որ առաջի եդեալ կայ. ի փրկութիւն ամենայն աշխարհի եւ ինձ մեղաւորիս, եւ յառողջութիւն ամենեցուն՝ որք ի պէսպէս ցաւս եւ ի հիւանդութիւնս անկեալ կան հոգւով եւ մարմնով. եւ որք յաւտարութիւնս եւ ի բանդս եւ ի ծառայութիւն եւ յամենայն նեղութիւնս ըմբռնեալ կան՝ ազատութիւն շնորհեա։*

*Աւրհնեա[63] եւ զպսակ տարւոյ քաղցրութեամբ քո. եւ զաւդս բարեխառն եւ զպտուղս երկրի հանապազ։ Պահեա Տէր եւ զհաւատացեալ ժողովուրդս քո յամենայն նեղութենէ,[64] եւ ի փորձութեանց դիւականաց եւ ի մարդոց չարաց եւ յանհանդուրժելի որոգայթից, եւ ի գիշերական եւ ի գիճական որոգայթից։ Նոյ տուր մեզ բարիոք եւ երանելի վարուք եւ բարի գործովք*

---

Վեննետկոյ Լիոնեան ձեռագրի ընդօրինակութիւնը)՝ "քեզ վայել է։" ‖[169] Լ "յամենայն աւուրց (փխ. "աւուրս") կենաց։" ‖[172] Լ "մեծ եւ ահաւոր խոր-

[62] Ասորին միայն՝ "Եւ պահեա զիս յերկրաւոր խորհրդոց։" Մնացեալ մասը քիչ մը տարբեր է Ասորւոյն մէջ, այսպէս՝ "եւ որպէս վայելէ արթնութեան որ պահանջի ի սպասաւորութեանս, որբութեամբ մատակարարեցից զխորհուրդս (sancte tractam haec mysteria.) Եւ վասն հիւանդաց մարմնով եւ հոգւով (աղաչեմք), եւ վասն այլոց՝ որ ի խիստ փորձութիւնս են (Ասորին բուն "ի մաքրութիւնս" in purgationibus), այսինքն ի վտանգս եւ յաքսորս, զի նոցա զառողջութիւն եւ զհանգիստ, իսկ սոցա զազատութիւն եւ զփրկութիւն շնորհեսցես։ Օրհնեա" եւն։

[63] Հոս ("Աւրհնեա զպտուղս երկրի հանապազ" խօսքով) կը լմնայ Ասորւոյն մէջ Յիշատակաց առաջին գրուածքը՝ ժողովրդեան պատասխանելովը՝ "Տէր ողորմեա։" Սակայն առկէ մինչեւ յաջորդ գրուածքին վերջը (տող 177—.85, ծան. 63—66) առնուած է "Կիւրղի" Պատարագէն (տես վերը՝ էջ 263—64, տող 151—164), այնպէս որ "Իգնատիոսի" Պատարագիս յօրինող Ասորին առջեւն ունեցած է այն Պատարագն՝ անշուշտ ասորերէն, կամ գոնէ յունարէն։ Հոս հայերէն թարգմանութիւնը բոլորովին համաձայն է "Կիւրղի" Պատարագին. մինչ Ասորին տեղ տեղ կը շեղի (տես յաջորդքը)։

[64] Հոս քանի մը խօսք աւելի ունի Ասորին եւ շարունակութիւնն ալ քիչ մը տարբեր, այսինքն՝ "...ժողովուրդս քո, [illegible], եւ յամենայն ազգէ նեղութեան, եւ յորոգայթից չարաց եւ Սատանակարաց դիւաց եւ մարդոց չարաց. եւ յամենայն անհանդուրժելի ցաւոց, ի բռնութենէ՝ որ եդեալ է ի վերայ գլխոց մերոց, եւ յամենայն փորձութեանց ծանուանց զերծո զմեզ. եւ տուր մեզ" եւն։

մտանել ի սրբութիւն սրբոց քոց՝ զուարճանալ եւ ցնծալ հոգեւորական խընդութեամբ.[65] եւ միաբան մատուցանել գոհութիւն եւ խոստովանութիւն եւ երկրպագութիւն քեզ Հաւր եւ միածնի Որդւոյ քո եւ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ եւ յաւ.։[66]

Յիշեա տէր եւ զաւրհնեալ ժողովուրդս՝ զերկրպագողս անուանդ քում սրբոյ,[67] որք երկիւղիւ եւ հաւատով եկեալ կան առաջի քո։ Յիշեա՛ Տէր եւ զայնոսիկ որք յանձն արարին մեզ անարժանիցս յիշել յաղաւթս մեր՝ զարս եւ զկանայս. եւ պարգեւեա նոցա ի մեծամեծ բարեաց քոց։[68] Յիշեա Տէր եւ զպտղատուս եւ որք բարիս գործեցին յեկեղեցիս եւ զայնոսիկ որք մատուցին զուարթութեամբ զպատարագս իւրեանց։ Յիշեա Տէր եւ զնոսա որք կամեցան մատուցանել եւ ոչ կարացին։[69]

[Ընկալ, Տէր, զպատարագս,[70]] եւ տասանորդս, եւ զերախայրս մեծամեծ պտղոց,[71] հաճելի զենմանց ի հոտ անուշից քեզ. եւ առաքեա՛ ի մեզ զհատուցումն բարեաց եւ զվճար ճշմարիտ պարգեւաց, որ աւգնական ես ամենեցուն, եւ տուիչ հանապազ երանութեանց. որ լիապէս լնուս զմարդիկ արդարութեամբ ի գործս առաքինութեան, եւ կրաւնս աստուածպաշտութեան։[72] Եւ զկաթուղիկէ եկեղեցի քո ամրացո հրեշտակային պահպանութեամբ, ի հաւատս անբիծս եւ ի գործս բարիս. զի դու ես պարգեւիչ բարեաց եւ տուող ողորմութեան, եւ քեզ փառք եւ իշխանութիւն եւ պատիւ եւ Որդւոյ քո եւ սուրբ Հոգւոյն, այժմ եւ միշտ։[73]

---

հրդոյս։" ‖ 183–84 Լ "մատուցանել ... երկրպագութիւն քեզ Հօր եւ Միածնի Որդւոյ" եւն։ ‖ 193 Մենք աւելցուցինք (փակագծի մէջ) սա բառերը՝ "Ընկալ, Տէր, զպատարագս." ինչպէս խօսքն ու ասորի բնագիրը կը պահանջէ։ ‖ 198 Լ

[65] Ասորին՝ "...ցնծալ հոգեւորական պարգեւօք, եւ միանգամայն մատուցանել քեզ պատարագս ընդունելիս։"

[66] Ասորին միայն՝ "Եւ անդադար գոհութիւն մատուցանել քեզ եւ Միածնի Որդւոյ քում։ Ժողովուրդն. Ամէն։" Ասով կը լմննայ հոն Յիշատակաց երկրորդ գրուածը։ — Յաջորդ մասին սկիզբը կայ խորագիրս՝ "Քհ. խոնարհէ։"

[67] "Անուանդ քում սրբոյ" հայուն յատուկ է. (Ասորին պարզապէս՝ "զերկրպագողս քո։")

[68] Ասորին չունի՝ "զարս եւ զկանայս ... բարեաց քոց։" Բայց ասոր տեղ ամբողջ նախադասութիւն մը կայ հոն, որ կը պակսի մեր թարգմանութեան մէջ, այսինքն՝ "Յիշեա Տէր զամենեսեան առհասարակ եւ զիւրաքանչիւր ըզ տառանձինն. որ ինչ օգտակար եւ կարեւոր իցէ նոցա՝ շնորհեա։"

[69] Հոս ալ կ'աւարտի Ասորւոյն քով Յիշատակաց երրորդ գրուածը սա պատասխանով՝ "Ժողովուրդն. Տէր ողորմեա։" Յաջորդ մասին սկիզբը կայ սա խորագիրը՝ "Քհ. ի յոյն բարձր։"

[70] Փակագծեալը մենք աւելցուցած ենք ըստ Ասորւոյն, որ եւ հոս ստուգիւ անհրաժեշտ է։ Լատինը Suscipe Domine ablationes etc.

[71] Լատինը ասոր տեղ՝ primitias (զերախայրիս)։ Հայուն մէջ "Եւ զերախայրս ...պտղոց" ընդհանուր առութեամբ բացատրուած է։ Իսկ յաջորդն այսպէս ունի Ասորին՝ "եւ զպտուղս խաղաղութեան, պատարագաց (Հ "հաճելի զենմանց") ծառայից քոց ի հոտ անուշութեան։"

[72] Այս ամէնը միայն յընդհանուրն կը համաձայնի Ասորւոյն հետ, որ կ'ըսէ՝ "Եւ հատո՛ եւ առաքեա առ մեզ, ով հատուցանող բարի, զշնորհս պարգեւաց, զլիութիւն տրոց յօգնութիւն մեր, զառատութիւն յաւիտենական բարեաց, մեծատունս զմեզ եւ զնոսին առնելով գործովք բարեպաշտութեան եւ արդարութեան։"

[73] Բաւական տարբեր է գրուածքիս այս վերջաւորութիւնն ալ, ուր Ասորին կ'ըսէ՝ "Հա-

Յիշեա Տէր զընդհանուր զամենայն թագաւորս քրիստոնէից. եւ խաղաղացո զաշխարհակալութիւնս[74] իւրեանց. եւ որք ի ներքոյ ձեռաց նոցա են՝ տուր արդարութեամբ ընթանալ:[75]

Պահապան եւ փրկիչ լեր Տէր նոցա.[76] եւ փրկեա ամենազաւր եւ կարող բազկաւ քով ի սովոյ, ի տարաժամ մահուանէ, եւ ի խռովութենէ պատերազմաց, եւ ի կորստական գերութենէ. եւ խաղաղացո անդորրապէս եւ անխռով զամենայն աւուրս կենաց իւրեանց. զի ոչ ունիմք զայլ ոք ապաւէն եւ յոյս՝ բայց զքեզ միայն, փրկել[77] զմեզ յամենայն իշխանութեանց սատանայի, եւ ի մարդոց բռնաւորաց. զի դու միայն ես յամենայնի որ արդարապէս պատերազմիս ընդ մեր. եւ քեզ փառս վերառաքեմք եւ միածնի Որդւոյ քո եւ սուրբ Հոգւոյդ՝ այժմ եւ միշտ:

Եւ իբրեւ յիշատակեմք առաջի քո, Տէր, զամենայն սուրբս եւ զարդարսն առաջինս, եւ զմաղթանս նոցա ածեմք առաջի քո: Եւս առաւել զսրբուհի կոյսն Մարիամ Աստուածածին եւ զյառաջընթաց մարգարէն զՅովհաննէս Մկրտիչն, եւ զսուրբն Ստեփաննոս գլուխ սարկաւագաց եւ նախավկայն մարտիրոսաց. եւ զամենայն գունդս մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց, խոստովանողաց, եւ այլոցն ամենեցունց՝ որոց անուանքն գրեալ են ի դպրութիւն կենաց: — Ի ձայն.[78] — Ընդ որս եւ մեզ այց արարցես բարերարութեամբ քո:

---

“ամբարացոյ.„ եւ նմաններ՝ այլուր: ‖[206] L “բազկաւ քո:„ ‖[221] L “Սարկաւագն

զորգս արարեալ զմեզ հրեշտակացն պահպանութեամբ, եւ անարատ եւ առաքելական խոստովանութեամբ, զի առատ (magnificus) ես դու ի սուրբս քո, եւ քեզ փառք եւ գոհութիւն մատուցանեմ եւ Միածնի Որդւոյդ քում եւ Հոգւոյդ քում սրբոյ:„ Հոս կը կցուի պատասխանին՝ “Ժողովուրդն. Ամէն:„ — Յաջորդ դրուագին սկիզբը կայ խորագիրս՝ “Քհ. խոնարհէ:„

[74] “Աշխարհակալութիւն„ հոս պարզապէս “տէրութիւն„ իմաստով է, Ռընոտոյ՝ imperium. Մ'ենթադրենք որ նաեւ հայոյն գործածած բնագիրը հոս [illegible] կը կարդար եւ ոչ ուրիշ բան:

[75] “Որք ներքոյ ձեռաց նոցա„ ստորակայութիւն մը (ասորերէն՝ [illegible]) փոխանակ “հպատակ„ ըսելու, ինչպէս Ռընոտոյ ալ թարգմանած է ut subditos sibi gubernent ըսելով: Բայց ամբողջ խօսքը տարբեր է Ասորւոյն քով ըսելով՝ “Եւ տուր նոցա զի զհպատակեալս իւրեանց արդարութեամբ վարեսցեն:„ — Հոս կը կցէ Ասորին՝ “Ժողովուրդն. Տէր ողորմեա:„ Յաջորդ դրուագին սկիզբն ալ՝ “Քհ. ի ձայն բարձր:„

[76] Ո՛չ “նոցա„ այսինքն՝ թագաւորաց. որոնց համար յիշատակութիւնն եղաւ նախընթաց խօսքով, այլ՝ գոնէ Ասորւոյն համեմատ՝ կը խնդրուի պահապան եւ փրկիչ ըլլալ “եկեղեցւոյ քո սրբոյ եւ ամենայն հաւատացեալ որդւոց քոց. եւ փրկեա զմեզ ամենազօր կարողութեամբ քով ի սովոյ, ի չարաչար մահուանէ, ի պատերազմաց եւ խռովութեանց, ի կորստաբեր հալածանաց. եւ անդորրութեամբ եւ խաղաղութեամբ առաջնորդեա մեզ խնամովք զամենայն աւուրս կենաց մերոց. զի ոչ ունիմք„ եւն: Ըստ այսմ բազմօք եղանակաւորուած բնագիր մ'ունէր հայ թարգմանիչն իւր առջեւը:

[77] Աստ տեղ ասորին՝ “Եղծ կարողութեամբ քով զկարողութիւն այնոցիկ՝ որ հակառակ կան տէրութեան քում, եւ հնազանդ արա զամենայն որ ծառայութեան անուան քո սրբոյ. զի դու ես միայն յաղթող եւ պատերազմող, եւ քեզ փառս„ եւն: Վերջը՝ “Ժողովուրդն. Ամէն.„ իսկ յաջորդ դրուագէն յառաջ՝ “Քհ. խոնարհէ:„ Բովանդակ ասորի բնագրին մէջ գրեթէ ամէն եւ “ի ձայն բարձր„ խորագրէն զատ ուրիշ խորագիր չկայ:

[78] Հոս ասորին “Ժողովուրդն. Ամէն:„ Եւ յաջորդին սկիզբն՝ “Քհ. ի ձայն բարձր: Զի զա-

*Սարկ. աստ յիշատակէ զանուանս սրբոցն. եւ քահանայն խունկ արկանէ եւ ասէ զաղաւթս ի ծածուկ.*[79] *Նոյն յորժամ զաղաչանս սրբոց քոց ընդունիս եւ հաշտիս ընդ մեզ ընդունելի աղաւթիւք նոցա, զոր մատուցին քեզ որպէս խունկ անուշահոտ, ընկալ եւ զմեզ մարդասիրութեամբ քո եւ զպակաս բուրմունս խնկոց եւ աղաւթից՝ զոր մատուցանեմք առաջի սրբոյ սեղանոյս քո. եւ մի դարձուցաներ զերեսս քո ի մէնջ. եւ մի բարկութեամբ խրատեր եւ սրտմտութեամբ կորուսաներ. այլ ըստ անբաւ գիտութեան քո եւ ամենախնամ բարերարութեանն՝ քաւեա զմեզ.*[80] *եւ լուսաւորեա*[81] *զմեզ աստուածային գիտութեամբ քո, եւ զամենայն ժողովուրդս զգինս արեան Որդւոյ քո Տեառն մերոյ զսեպհական ժառանգութիւնս:*[82]

*Յիշեա տէր զնախարարսն*[83] *մեր եւ զլուսաւորիչսն եկեղեցւոյ՝ զսուրբն Դիոնեսիոս, զՅուլիանոս, զԱթանասիոս, զԿիւրղոս, զԳրիգորիոս, եւ զՏե-*

---

տյս (փխ. “աստ”) յիշատակէ” եւն: ||[230] Լ “սեփական:” ||[245] Լ “...վայելէ

զաղաչանս նոցա որ քո են, հաճութեամբ ընկալցիս” եւն: Ուստի “Ընդ որս” եւն եւ ասոր կից խրատագիրը “Սրկ. աստ յիշատակէ” եւն՝ չկայ Ասորւոյն քով:

[79] Այս աղօթքն ալ, ինչպէս գրեթէ Պատարագիս ամէն մասերը, միեւնոյն գաղափարին վրայ կը դառնայ թէ Ասորւոյն եւ թէ Հայոյն քով. իսկ մանրամասնութեանց մէջ փոքր՝ բայց բազմաթիւ՝ տարբերութիւնք կան: Ասորւոյն մէջ հետքը չկայ ասութեանցս “Որպէս խունկ անուշահոտ,” “զպակաս բուրմունս խնկոյ” եւն: Խօսք մը հոս, վերադիր մը հոն պակաս կամ աւելի է, առանց ընդհանուր համաձայնութեան վնասելու: Այսպիսեաց մէջ՝ քանի որ երկու խմբագրութեանց նկարագիր ունին, նախամեծար կը համարինք Հայոյն ընթերցուածն, ուր վերջինս աղաւաղ չէ:

[80] Հայը հոս աղաւաղ կ'երեւայ: Լաւագոյն է Ասորին՝ “ըստ թայբութօխ քո (— ոչ “գիտութեան,” ինչպէս ունի Հայերէն ձեռագիրը, —) ընկալ զմեզ, եւ ըստ առատութեան բարութեան (Հ “ամենախնամ բարերարութեան”) քո՝ հուսյե է Տէլ:” Վերջնոյս տեղ Հայը՝ “քաւեա զմեզ” կ'ըսէ:

[81] Ասորւոյն սեպհական ասութիւնք հոս այսպէս կը փոխադրէ Ռընոտոյ՝ Illumina vultum tuum super nos et super omnem plebem haereditatis tuae (“Լուսաւորեա զերեսս քո ի վերայ մեր եւ ի վերայ ամենայն ժողովրդեան ժառանգութեան քո”):

[82] “Զգինս արեան Որդւոյ քո Տեառն մերոյ” չունի Ասորին. բայց ասոր տեղ գրուածքս տա վերջաւորութիւնը, որ Հայերէնին մէջ չկայ “Զի քեզ հաճոյ է շնորհել զփրկութիւն եւ քո է խաղաղութիւն եւ փրկութիւն. եւ քեզ փառս եւ գոհութիւն մատուցանեմք եւ Միածնի Որդւոյ քում: Ժողովուրդն. Ամէն:” Յաւլորգին սկիզբն ալ՝ “Քհ. Խանուրհի:”

[83] Հաս նորանշան թարգմանութիւն է “Շուբարան:” Կը բաղձայինք հոս սուրբ բնագիրն ունենալ, տեսնելու համար թէ ինչ բառ աւութ տուած է այս թարգմանութեան: Դժուարաւ կրնայ ܠܝܘܟܐ (——, առաջնորդք, եւ ——) եղած ըլլալ. վասն զի Ռընոտոյ հոս “Պատրիարք” բառը կարդացած է (եթէ այս իմաստով չէ գործածուած “Նախարար”), Ասորին այսպէս ըլլալով՝ “Յիշեա Տէր զընտրեալ եւ զսուրբ Հայրս՝ զՊատրիարքն, եւ զայնոսիկ՝ որ Բարեփառք եւ (Հ. “լուսաւորիչք”) դաստիարակք եղեն սրբոց խորհրդոց եկեղեցւոյ քոյ սրբոյ, եւ մանաւանդ զԻգնատիոս (Հ. լաւ եւս չունի), զԴիոնեսիոս, զՅուլիոս, զԱթանասիոս, զԲասիլ (Հ. ասոր տեղ “զԿիւրղոս”), զԳրիգոր, Դիոսկորոս, զՍեւերոս, եւ այլ առաքեալս եւ զհայրս, որ առ քեզ փոխեցան: Ժողովուրդն. Տէր ողորմեա:” Հայը չունի Դիոսկորոս եւ Սեւերոս յիշատակութիւնն, որով՝ եթէ միայն յետոյ յաւելուած չեն, կը ցուցուի այս Պատարագիս Յակոբիկեանց աղանդոյն սեպհական ըլլալը, որոնց կը վերագրէ նաեւ Ռընոտոյ (Renaudot, II, p, 226.) Կարծենք թէ այս երկու անունն ալ կար հայ թարգմանչին սուրբ օրինակին մէջ, եւ թարգմանիչը կամաւ դուրս թողուցած է՝ դիւրաւ մեկնելի պատճառաւ:

տեւողս նոցին զհովուապետսն մեր՝ որք ուղղափառ խոստովանութեամբ առ քեզ փոխեցան:

Նոյս առաւել[84] զվերակացուս բանաւոր հաւտի զքահանայապետսն մեր եւ զվարդապետս եւ զամենայն դասս պաշտաւնէից. եւ զբարեպաշտ թագաւորսն մեր եւ զամենայն թագաւոր քրիստոնէից, խաղաղական եւ պարագայց ամաւք շնորհեա եկեղեցւոյ քում սրբոյ ընդ երկայն աւուրս. եւ պարգեւեա նոցա մեծաւ փառաւք յարքայութեան քում լինել, որք ուղղութեամբ առաջնորդեցին եւ ճշմարտութեամբ ուսուցին մեզ զբարիոք դաւանութիւն եւ զհաւատս առաքելական կանոնաց. եւ աղաւթիւք նոցա փրկեա զմեզ ի դիւական եւ ի հերձուածողական մոլորութեանց, եւ յամենայն փորձանաց. եւ ուղղեա ի հաւատս ամբիծս եւ անարատս՝ զոր ի քէն ընկալան. եւ արժանացո զմեզ զամենեսեան երանելի կենաց նոցա. շնորհաւք միածնի որդւոյ քո Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք եւ իշխ.:

Սարկ. ասէ զգոհութիւնն եւ քահ. աղաւթէ.[85] Յիշեա Տէր ընծայեալս մեր՝ զոր այսաւր յիշատակեմք առաջի քո. եւ զամենեսեան՝ որ խոստովանութեամբ եւ ուղղափառ հաւատով ելին յայսմ աշխարհէ:[86] Յիշեա Տէր զքահանայս եւ զսարկաւագունս,[87] եւ զկիսասարկաւագունս, եւ զընթերցողս, եւ զամենայն դաս պաշտաւնէից եկեղեցականաց:[88] Յիշեա Տէր զմիանձունս

---

փառք իշխ.:» ‖246 Նօտրգիր «ընծայեալս» բառին մասին սա դիտողութիւնը կ'ընէ Վ. Հ. Յովհաննէս՝ «Այս բան յետոյ յաւելեալ է կատարեալ գրչաւ.

84 Ամբողջ տողը բաւական տարբեր է Ասորւոյն քով՝ «Քհ. Է յոյն բուրէ. Զվարդապետս, զերկրպագուսն եւ զառաջնորդս (rectores, Հ «վերակացուս») Ասորին՝ չենք տարակուսիր՝ եր ܡܕܒܪܢܐ, տես «Վրդ. Ասոր.» Վիեննա 1896, էջ 43.) հովիւսրն ուխտից, քահանայական հօտից քոց, ընկալ, Տէր. եւ զնոսա որ սրբութեամբ սկիզբն արարին՝ ըստ Առաքելոյն՝ խաղաղական ժառանգութեան, այսինքն է աստուածաքանութեան՝ որ առաջաւ փրկարար արեամբ Քրիստոսի Միածնի Որդւոյ քո, այնոցիկ որ բանիւք մեկնեցին յեկեղեցիս քո սուրբս՝ զփառս մեծվայելչութեան փառաւորեալ Թագաւորութեան քոյ, եւ ի վերայ հիման հաւատոյ շինեցին զգիտութիւն ընդհանուր ճշմարիտ կրօնից եւ առողջն վարդապետութեան. զի սուրբ եւ ընդունելի խնդրուածովք նոցա, Տէր, ոչ թողուցուս զմեզ անպատսպարս ի խարդաւանաց եւ յորոգայթից բազմազգի մոլորութեան խոտելի վարդապետութեանց. այլ վարդապետութեամբ նոցին հարցն մերոց երանելեաց հաստատեա զմեզ եւ զհաւատս նոցա հեզ ի մեզ, եւ բարեաց նոցա զնոյին արժանիս արա, եւ ընդ նոսա քեզ փառս եւ գոհութիւնս մատուսցուք: Ժողովուրդն. Ամէն:» Համեմատելու է առոր հետ՝ զոր ճանաչենք ըստ կարի բառ առ բառ ընծայել, հայերէն թարգմանութեան վերը գրուած առոր համապատասխանող մասը, եւ պայծառ կը տեսնուի երկու խմբագրութեանց բնագրական տարբերութեան չափը:

85 Այս խորանագիրը չկայ Ասորւոյն մէջ. հապա առոր տեղ՝ «Քհ. Խնկարկէ,» ըստ սովորութեան:

86 Հոս կարճ է Ասորին՝ «Յիշեա Տէր եւ զնոսա որ յայսմ աշխարհէ առ քեզ փոխեցան, աղաչեմք զքեզ, Տէր, զքահանայս» եւն: Յամենայն դէպս հայ ձեռագրին մէջ եղած բառի մը դատարկը լրացընելու է՝ «ընծայեալս» գրելով զայն:

87 Ասորին կը յաւելու՝ «որ մաքրութեամբ եւ սրբութեամբ ի քահանայութեան եւ ի սպասաւորութեան կացին առաջի սեղանոյ քոյ:»

88 Այս վերջին խօսքը չկայ Ասորւոյն քով, որ ընդհանրապէս մինչեւ այս գրուածին ծայրը քանի բառով կը համառօտէ, այսպէս՝ «զկիսասարկաւագունս, զընթերցողս, զկրօնաւորս, զմիանձունս, եւ զամենեսին զնոսա՝ զորս իւրաքանչիւր ոք յայսմ աւուր ի միտ բերէ: Ժողովուրդն.

եւ զկրաւնաւորս, եւ զայնոսիկ որ ի լերինս եւ յանձաւս բնակեալ են՝ զայրս եւ զկանայս, եւ զամենեսեան՝ որք արհամարհեցին զմարմին եւ զմարմնական հեշտութիւնս, եւ ըստ կամաց քոց ընթացան։

Յիշեա Տէր քաղցրութեամբ քո եւ խաղաղութեամբ ընկալ զմարմին եւ զհոգիս[89] ծառայից քոց երկրպագուաց՝ որք հաւատով կատարեցան ի քեզ, մանաւանդ որոց պատարագս մատուցանի այսաւր։ Հանգո եւ արժանացո[90] ալթեւանաց արդարոց ի տեղիս լուսոյ եւ հանգստեան, ի խորանս եւ յեկեղեցիս անդրանկաց կատարելոց, եւ ի բիւրաւոր բանակս հրեշտակաց, յերկնաւորդ Երուսաղէմ. եւ մարդասիրեա եւ առ նոսա, եւ քաւեա զմեղս նոցա, եւ պարգեւեա զկեանս անվախճան, երանութիւնս անպատումս, ցնծութիւն մշտնջենաւոր, ուրախութիւն յաւիտենական, եւ շնորհս եւ ողորմութիւնս, եւ յարակայ վայելել առատապէս ի նախախնամական պարգեւս քո. եւ մի պարտաւորեր զնոսա որք յուսացան ի քեզ Աստուած Հայր եւ ի Միածին Որդիդ քո ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Որով ի ձեռն նորա եւ մեք գտցուք զթողութիւն մեղաց եւ զքաւութիւն յանցանաց։

Ժողովուրդն բարձր ասեն. Հանգո, քաւեա, թող Աստուած զմեղս եւ զյանցանս մեր եւ նոցա, զկամայ եւ զակամայ, զգիտութեան եւ զանգիտութեան։[91]

[Քահանայն խոնարհի.][92] Քաւեա Տէր Աստուած մեր, եւ թող զամենայն անաւրէնութիւն եւ զյանցաւորութիւն զմերս եւ զնոցա. եւ մի համարս պահանջեր ի մէնջ բանից եւ գործոց. վասն զի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի, եւ կամ մաքուր լեցի յաղտից. զի դու միայն ես արդար

յօրինակութեանն դատարկ էր տեղին։" ‖[262] Լ յարակա։ ‖[265] "Յանցանաց" բառին նկատմամբ դիտել կու տայ Վ. Հ. Յովհաննէս՝ "Յօրինակին էր յանձանաց, ի լուսանցս ուղղագրեալ է՝ յանցանաց։"

Տէր ողորմեա։" Ասկէ ետքը կը կցի յաջորդ դրուագը՝ "ՔՀ. է չոյն թուղթ. Քաղցրութեամբ եւ խաղաղութեամբ ընկալ բարերարութեամբդ քով, Տէր, զհոգիս" եւն։

[89] Հայոյն "զմարմինս եւ զհոգիս" ըսելուն տեղ՝ Ասորին ունի animas et spiritus (զշունչս եւ զհոգիս)։

[90] Ասորին՝ "Յիշեա զնոսա, հանգո եւ ժողովեա զնոսա յօթեւանս լուսոյ, ի տեղիս հագւոյ երանելեաց, յերկնաւորդ Երուսաղէմ, յեկեղեցիս անդրանկաց գրելոց ի յերկինս. եւ շնորհեա նոցա, Տէր, մարդասիրութեամբ (— Հ. "մարդասիրեա" —) զյիշատակ եւ զհանգիստ երջանիկ. պարգեւեա նոցա զկեանս առանց ծերութեան (— Հ "կեանս անվախճան." —), բարիս անանցս եւ երանութիւնս անվախճանս։ Ընկալցին զթողութիւն գթութեամբ քով. հասցեն հանգստեան ողորմութեամբ քով. Թագիցեն ընդ թեւովք շնորհաց քոց զի մի դատապարտեսցին, զի յուսացան ի քեզ եւ ի Միածին Որդի քո, որով յուսամք եւ մեք հասանել ողորմութեան" եւն։ — Աստ եւ Հայոյն մէջ տարբերութիւնն արդէն շատ մեծ է։

[91] Ասորին պարզապէս՝ "Ժողովուրդ. Շնորհեա զհանգիստ։"

[92] Այս խորագիրն աւելցուցինք Ասորւոյն համեմատ, որ հարկաւոր ալ է։ Վասն զի հայերէնին մէջ խորագիր չըլլալով՝ կրնար կարծուիլ որ ասկէ ետքն եկածն ալ շարունակութիւն ըլլայ ժողովրդեան "բարձր" ըսելիքին։ Ընդհակառակն այս անշուշտ երկար Յիշատակաց-աղօթքին վերջին դրուագն է յաջորդը, որ մանր տարբերութիւնները չհաշուելով, նոյն է երկու խմբագրութեանց մէջ ալ։

*եւ մաքուր յամենայնէ Տէր Աստուած մեր. եւ քեզ փառք յաւ.:*[93] *Խնդրեմք եւ աղաչեմք զանհասանելի եւ զանձեռնարկելի*[94] *ողորմութիւնդ քո.*[95] *մի թողուր ի ձեռանէ քումմէ զընկղմեալքս զմեզ ի մեղս զանազանս, զնուաստ եւ զանպիտան ծառայքս՝ գահավիժել ի վիհս կորստեան: Այլ ողորմութեամբ քո պարգեւեա մեզ ուրախութեամբ գնալ ի ճանապարհս քո. եւ առնել զկամս քո եւ կատարել զարարչական հրամանս քո. եւ կացո զմեզ անամօթս առաջի ահաւոր բեմի Միածնի Որդւոյ քո: — Ի ձայն. — Ընդ որում աւրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ ամենասուրբ եւ բարերար Հոգւովդ, այժմ եւ միշտ.:*

*Ժողովուրդն. Որպէս էրն եւ է եւ եղիցի եւ մնայ յաւիտեանս յաւիտենից:*

*Քահ. ղառնայ. Խաղաղութիւն ընդ ամենեսեան: — Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում:*[96]

*Քահ. աստանաւր ոչ սպասցէ վայրապար ինչ. քանզի սովորութիւն է Ասորոցն յայսմ տեղւոջ բեկանել եւ կնքել զսուրբ մարմինն. այլ ոչ ամենայն եկեղեցեաց է այս սովորութիւն. այլ յորժամ վերացուցանէ զսուրբ հացն ի տես ժողովրդեանն, եւ ապա զխորհրդական աղաւթանին ասասցէ եւ բաշխեսցէ զտէրունական մարմինն, որպէս եւ հրամայէ սուրբն Վասիլիոս եւ Ներսէս եւ սուրբ Յովհաննէս:*[97]

---

[93] Անճահ է հոս այս վերջաբանը "Եւ քեզ փառք յաւիտեանս„, որ չկայ ալ Ասորերէնին մէջ:

[94] Դժբախտաբար ծանօթ չէ սորի բնագիրը, որ աւելի տուած է հոս այս նորանշան "անքննելի ողորմութիւն„ ասացուածին: Ասորին կ'ըսէ abyssum imperscrutabilem clementiae tuae ("զանդունդս անհասանելի գթութեանդ քո:„)

[95] Ասորին՝ "զի մեզ ակարացս եւ մեղաւորացս ի մեղս, թողութիւն շնորհեսցես ողորմութեամբ քով, եւ մի թողուցուս զմեզ այնոցիկ՝ յորոց յափշտակիմք (abripiamur) ի վնասակար մոլորութիւն, որ ածէ զմեզ ի կորուստ: Այլ պարգեւեա մեզ գնալ ի ճանապարհս քո եւ առնել զկամս քո, եւ գտանել զողորմութիւն, զվախճանն հանգստեամբ, եւ զհաւատարմութիւն քեզ հաճոյական եւ կալ առանց ամօթոյ առաջի ահաւոր բեմի Միածնի Որդւոյ քոյ. որպէս զի յայսմ՝ որպէս եւ յամենայնի՝ փառաւորեսցի եւ գովեսցի անուն քո ամենապատիւ եւ օրհնեալ միանգամայն եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ Հոգւոյդ քոյ սրբոյ, այժմ„ եւն:

[96] Այս պատասխանիքն համառօտութեամբ նշանակուած են Ուռհայի քով, որ առանց կը կցէ սա երկու խօսքն ալ՝ "Քհ. Ողորմութիւն Աստուծոյ եւն: Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում:„

[97] Այս խորագիր-ծանօթութիւնն բնականաբար հայ թարգմանչէն (կամ յետագայ գրիչէ մը) աւելցուած է: Պատճառ տուած է այս դիտողութեանս Ասորւոյն մէջ հոս գտնուած սա խորագիրը՝ Diaconus dicit Catholicam. Sacerdos frangit et signat Oblatam (Սարկաւագն ասէ զԱմենայն սրբովքն: Քահանայն բեկանէ եւ կնքէ զնշխարն.„ որմէ եւքը միայն սա տողն ալ կայ "Սրկ. զՀրեշտակ.„ Յաւելուածը չէ նշանակուած): — Հայոյն վկայութեան բերած "Վասիլեան„ պատարագը բուն Բարսղէ Պատարագն է երկրորդ թարգմանութեամբ (տես էջ 180 եւն.) վասն զի առաջինն այս առեններն միայն Լուսաւորչի անուամբ ծանօթ էր: Ուստի հոս յիշուածը չէ "սրբոյ հօրն մերոյ Վասիլիոս„ կամ Նախասրբելոց Պատարագը, զոր քիչ մ'եռքը կը տեսնենք: Իսկ յիշուած Յովհաննու Ոսկեբերանի Պատարագը տեսանք արդէն ասկէ յառաջ: Կը մնայ միայն "Ներսէս„ անունն, որ շատ հաւանօր կռուան մը կուտայ մեզ այս Պատարագիս հայերէն թարգմանութեան ժամանակն որոշելու: Վասն զի հոս յիշուածն է Ներսէսէ Լամբրոնացւոյ Պատարագի մեկնութիւնն եւ անոր մէջը առնուած Պատարագամատոյցն, գործք մ'որ ԺԲ դարուն վերջերը գրուած է, հեղինակին վկայութեան համեմատ՝ 1187—1192 տարիները:

## ԱՂԱՒԹՔ ՆԱԽՔԱՆ ԶՏԷՐՈՒՆԱԿԱՆՆ

Իւ. — *Սարկ. զԱմենայն սրբովքն, եւ քահ. աղաւթէ.*[98] Ճշմարտապէս իսկ անբաժանելի ես Հայր սուրբ, Որդի սուրբ, Հոգի սուրբ, հաւասար սըրբութիւն. դու ես աղբիւր ողորմութեան, եւ Հայր ամենողորմ, որ տիրաբար եւ հօգեւորապէս հանգչիս ի սուրբս. դու ես ծնող եւ բղխող մշտնջենական լուսոյն.[99] բազումողորմ եւ ողորմած,[100] աւգնական եւ ձեռնտու եւ խնամիչ աղքատաց. ապաւէն նեղելոց. առաջնորդ նաւորդաց. նաւահանգիստ եւ տեղի[101] աշխատաւորաց. մխիթարիչ սգաւորաց.[102] բժիշկ հիւանդաց. լուացող եւ սրբիչ ախտից սեւութեան: Դու ես որ յառաջն եւ ի սկիզբն եւ մշտնջենական էութեամբ ես.[103] սուրբ, եւ սրբիչ եւ կատարիչ սրբոց. եւ այժմ աղաչեմք եւ խնդրեմք ի քէն՝ արժանի արա զմեզ այսպիսի փառաբանութեամբ, պարզ մտաւք եւ ջերմագոյն սրտով եւ ընտիր երգովք. — *ի ձայն.* — անդադար ձայնիւ աղաղակել առ քեզ եւ ասել:

---

Թ. ||298 L "զամենայն սրբօքն: ||300 L "եւ ի սկիզբն. եւ մշտնջենական" եւն: ||303 L երգօվ: ||309 L "երկրպագանել:" ||311—12 "Զամենագութ"

Յամենայն դէպս այս թուէն ետքն է Պատարագիս Թարգմանութիւնը, բայց նաեւ ոչ ուշ քան ԺԳ դարու վերջերը, քանի որ 1314ին Անարզաբա գրուած՝ այժմու Լիոնեան՝ Օրինակն ուրիշ պատարագաց հետ սա ալ ունի արդէն (տես վերը՝ էջ 83): Թերեւս առանց նշանակութեան չէ որ Մոնաքոնեան օրինակին ժողովորը, որ 1289ին գրուած էր, չունէր տակաւին՝ ուրիշ քանի նոր պատարագներուն հետ՝ "Իգնատիոսի Պատարագը. այն թուականին շատ քիչ ծանօթ եղած ըլլալու էր այս նոր Խորհրդամատոյցն, որով նոյն Հաւաքման մէջ չէր կրցած մտնել: Թարգմանութիւնն եղած էր ըստ այսմ 1192էն ետքը եւ 1314էն բաւական յառաջ, մերձաւորապէս քիչ յառաջ քան 1289 թուականին գրուած Մոնաքոնեան օրինակը:

[98] Աստրին ալ այսպիսի խրատագիր մ'ունի. այսինքն՝ "Քհ. ասէ զաղօթս նախ քան զՀայր մեր:"

[99] Մինչեւ հոս Աղօթքին սկիզբն այսպէս ունի Աստրին՝ "Զի ճշմարտապէս եւ առանց երկբայութեան ես դու Հայր սուրբ Որդւոյ սրբոյ, որ սրբութեամբ հաւասար է Հոգւոյն սրբոյ. որ կատարելապէս եւ ամենազօր կարողութեամբ (cum summa potestate) հանգչիս ի սուրբս. եւ հանապազ ընդունիս զսրբասացութիւնս այնոցիկ՝ որ փառաբանեն զքեզ (sanctificationes eorum, qui te sanctificant, suscipis.) Դու ես աղբիւր անապականութեան (fons incolumitatis, Հ. լաւ եւս "աղբիւր ողորմութեան.") եւ ծագումն օգնականութեանց. դու ես ծնող ողորմութեան եւ հայր գթութեան (Հ. "հայր ամենողորմ.") ողորմած" եւն:

[100] Աստրին՝ "ողորմած եւ պաշտպան" (miserator, fautor.)

[101] "Տեղի" չի յարմարիր հոս, եթէ բառ մը պակսած չէ, այսինքն՝ "տեղի հանգստեան:" Այսպէս կ'ունի Աստրին ալ՝ portus et requies jactatorum.

[102] "Մխիթարիչ սգաւորաց" հոս չունի Աստրին (հմմտ. քիչ մը վերը "ապաւէն նեղելոց"), այլ անոր տեղ՝ "ապաւէն ծերացելոց:" Անկէ ետքն ալ այսպէս կ'ըսէ Աստրին՝ "բժիշկ բուժէ հիւանդաց. ու օգնէ ղուրտանաս ապաշխարողաց. սրբիչ ախտից այնոցիկ՝ որ անօրինեալ են, տուող պարգեւաց, զանձ մեծութեանց: Դու ես" եւն:

[103] Աստրին՝ "Դու ես ի սկզբանէ, ի յաւիտենից (Աստրին կրկին բառով՝ ab aeterno, a saeculo), մշտնջենաւոր:" Անկէ ետքն ալ մինչեւ Աղօթքիս ծայրը տարբեր է՝ այսպէս. "Սուրբ ես իսկ սրբութեամբ, սրբիչ եւ կատարիչ սրբոց. եւ մեք զփառաբանութիւն եւ զօրհներգութիւն (Որընտայ hymnorumque decantationem) մատուցանեմք քեզ, զայն՝ զոր յՈրդւոյ քումմէ սրբոյ, յՈրդւոյ քումմէ սիրելւոյ յօժարութեամբ ուսաք. խնդրեմք զի շնորհեսցես մեզ՝ սուրբ սրտիւ, բայց ջերմագոյն բարբառմամբ զովելի եղանակեամբ, զաղօթս մեր եւ զպաղատանս հեղուլ առաջի քո, մտացն լուսաւորութեամբ, զգաստութեամբ, եւ լեզուաց յաղթողական զօրութեամբ աղաղակել առ քեզ, աղաչել եւ ասել. Հայր մեր որ ես յերկինս:"

*Ժողովուրդն բազկատարած ասեն.* Հայր մեր որ յերկինս ես. սուրբ եղիցի։[104]

[*Քահ.*][105] Տէր, մի թողուր զմեզ ամբոխել յաշխարհական խուճապից, ի դիւական պատրանաց.[106] այլ միաբանեա զմեզ զամենեսեան, բեկեալ սրտիւ եւ խոնարհ հոգւով երկիր պագանել տէրութեան քում։[107] Եւ մի դարձուցաներ զերեսս քո ի մէնջ եւ անողորմաբար տանջեր զմեզ.[108] եւ մի մերժեր զմեզ յաւգնականութենէ քումմէ. այլ դարձ առ մեզ. եւ առաքեա զամենագութ շնորհս քո ի մեզ։ Վասն զի իշխանութիւն ունիս ամենայնի, եւ քեզ փառք եւ գոհութիւն վերբերգեմք եւ Միածնի Որդւոյ քո եւ ամենասուրբ Հոգւոյդ այժմ եւ միշտ. — *Ժող.* Ամէն։

[*Քահ.*] Խաղաղութիւն ընդ ամենեսեան։ — [*Ժող.*] Եւ ընդ հոգւոյդ քում։[109] — *Սարկ.* Առաջի քո, Տէր ողորմած, զգլուխս մեր խոնարհեցուցանեմք։[110] — *Ժող.* Առաջի քո Տէր։

## ԱՂԱԻԹՔ ԽՈՆԱՐՀՄԱՆ

Ժ. — *Քահ. ի ծածուկ.*[111] Քեզ[112] ամենայն արարածք՝ երկնաւորք եւ երկրաւոր բնութիւնք երկիր պագանեն, մարդասէր Տէր, Հոգի սուրբ. ընդ

---

բառին համար դիտել կու տայ Վ. Հ. Յովհաննէս՝ "Յօրինակին ղամինոյն եօան, այլ կապարեայ գրչաւ ուղղագրեալ է ի վերայ՝ ղամինոէօան։"

[104] Հոս հայ թարգմանը փոխած ըլլալու է ժողովրդեան տալով ամբողջ տէրունական աղօթքը։ Ասորւոյն մէջ "Հայր մեր որ ես յերկինս" բառերը քահանային բերնէն կ'ըսուին. (տես նախընթացին ծայրը։) Մնացեալը կ'ըսէ "Ժողովուրդն. Սուրբ եղիցի անուն քոյ մինչեւ վերջը։ Մեր հնոց քով ալ այս ասորի սովորութիւնը կար երկայն ժամանակ. (տես էջ 152 եւ այլուր։)

[105] Անհրաժեշտ էր հոս գոնէ "Քհ." խորագիրը դնել. Ասորին՝ "Քհ. ի ձայն բարձր։"

[106] Ասորին ըստ Ռընոտայի vexationibus mundanis sive diabolicis etc. ("յաշխարհական կամ ի դիւական խուճապանաց") կամ տագնապանաց տալու քան զկար մեր։

[107] Տարբեր է հոս Ասորին՝ "զի եթէ ոչ տարցես մեզ խնամ՝ լինիմք տկար, հիւանդ եւ բեկեալ սրտիւ եւ օտարանամք յառաջին ընտանութենէ քումմէ։"

[108] Մի "տանջեր զմեզ" շատ չի յարմարիր հոս։ Ասորին է հոս եւ յաջորդին՝ "Մի լիներ անողորմ, Տէր, եւ մի դարձուցաներ զերեսս քո ի մէնջ, եւ մի հեռի առներ զօգնականութիւն քո. այլ հայեաց ի մեզ, եւ առաքեա զշնորհս քո յօգնութիւն մեր։ Յամենայն յանցուածոց ազատեա զմեզ, եւ մի տանիր զմեզ ի փորձութիւն. զի քո է կարողութիւն եւ յաւիտենական իշխանութիւն, եւ քեզ փառք" եւն։

[109] Ժողովրդեան այս պատասխանը չի նշանակեր Ռընոտոյ, բայց անշուշտ կ'ենթադրուի։

[110] Սարկաւագի քարոզութիւնս այսպէս է Ասորւոյն մէջ՝ "Նախ քան զընդունելութիւն սրբոց խորհրդոցս այսոցիկ՝ որ մատուցեալք են, դարձեալ առաջի Տեառն ողորմածի զգլուխս մեր խոնարհեցուսցուք։"

Ժ. [111] Ասորին՝ "Քհ. ի ձայն բարձր"՝ ըստ իւր սովորութեան, ինչպէս միշտ։

[112] Ասիկայ երկրորդ հատուածն է որ առնուած է Նազիանզեան Պատարագներէն։ Տեսանք հատուած մը "Կիւրղի" Պատարագամատոյցէն (տես վերը Ծան. 63.) իսկ հոս կը գտնենք ուրիշ կտոր մը "Գրիգորի Աստուածաբանի" Պատարագէն (տես վերը՝ էջ 250, տող 112—118։) Հոն իբրեւ Կոչման աղօթք գրուած ըստ բովանդակութեան, սակայն բուն ձեռագրին մէջ Կանոնին սկիզբը գրուած է անյարիր կերպով (տես էջ 247, Ծան.) եւ վերջապէս Ճաշակման ետքն ալ նշանակած էինք նոյնը (տես էջ 254)։ Գրեթէ այս վերջնոյն տեղն առած գրած է այս "Իգնատիոսի" պատարագի յօրինողն ալ միեւնոյն աղօթքը։ Ինչպէս Կիւրղի հատուածը, նոյնպէս

որս եւ մեք խոնարհեցուցեալ զպարանոցս մեր, խնդրեմք յառատ սիրոյ քո՝ առաքեա զնորոգիչ Հոգիդ սուրբ եւ ճշմարիտ, սրբել եւ մաքրել զմեզ յամենայն ախտից. եւ պարգեւեա մեզ լիապէս աներկեղ եւ անդատապարտ մերձենալ ի կենդանարար եւ յանապական մարմին եւ արիւն Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. — ի ձայն. — ընդ որում քեզ Հոգւոյդ սրբոյ եւ Հաւրդ ամենակալի փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ: — Ժող. Ամէն:

Քահ.[113] երիցս երկրպագէ սրբոյ սեղանոյն եւ դառնայ ի ժողովուրդն. խաչակնքէ եւ ասէ բարձր ձայնիւ. Շնորհք սուրբ Երրորդութեանն անեղին եւ մշտնջենականին ընդ ձեզ ամենեսեան: — Սարկ. Պաւասխաւմէն: — Քահ. Ի սրբութիւն սրբոց: — Ժող. Միայն Հայր սուրբ. միայն Որդի սուրբ. միայն Հոգի սուրբ. աւրհնութիւն Հաւր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն եւ այժմ եւ միշտ եւ:

Քահ.ն ասէ. Միայն Հայր սուրբ ընդ մեզ. միայն Որդին սուրբ ընդ մեզ. միայն Հոգին սուրբ ընդ մեզ:

ԱՂԱՒԹՔ ՃԱՇԱԿՄԱՆ

ԺԸ. — Ու ապա խոնարհի եւ աղաւթէ եւ երիցս երկրպագէ եւ համբուրէ զսեղանն. եւ բաշխէ զհացն սուրբ ցամաք ի մաղզմայն:[114] Արդար եւ

Ժ. ‖[329] L խաչակնքէ: ‖[330] L "պաւսխաւմէն," ինչպէս այլուր միշտ օ:

այս կտորը հայերէնին մէջ բառ առ բառ նոյն է Կիւրղի եւ Գրիգորի պատարագաց հայերէն թարգմանութեան յիշեալ տեղերուն հետ. մինչդեռ երկուքն ալ Ասորւոյն մէջ՝ գոնէ Ռընտոյի թարգմանութեան համեմատ՝ բաւական տարբերութիւններ ունին: Արդեօք պատճառն այն է որ հայ թարգմանչին ծանօթ ըլլալով յիշեալ երկու Պատարագներն, բառ առնմ գրած է թարգմանելու ատեն: Անկարելի չէ այս. բայց դժուարութիւններ ալ կան, գլխաւորաբար այն՝ որ պէտք է ենթադրել թէ թարգմանչին աչքի զարկած ըլլայ ճշգիւ այս երկու կտորներուն փոխառեալ ըլլալը: Համանականագոյնս ասորի բնագրին մէջ երկու խմբագրութիւնք կային: — Հոս Ասորին այսպէս ունի ամբողջը՝ "Ընդ ամենայն բնութեան եւ երկնաւոր եւ երկրաւոր արարածս, որ քեզ երկիր պագանեն, Տէր, որպէս իմանամք հոգւով, եւ մեք զճշմարիտ երկրպագութիւն, խոնարհեցուցեալ զպարանոցս, մատուցանեմք քեզ. եւ խնդրեմք եւ յառատ սիրոյ քումմէ, զի լուսաւորեսցես զհոգիս մեր ճշմարտութեամբ քով: Մաքրեա զմեզ մշտակա քով. սրբեա զմեզ սրբութեամբ քով. դարձո զմեզ յերկիւղ քո. հաճեսցիս առաքել ի մեզ զզօրհնութիւնս քո. եւ այսպէս եւ այսու բարեօքս լցուցեալ զմեզ՝ մի՛ թողուցուս յանցաւորութեամբ մատչել ի հաղորդութիւն այսր կենդանարար մարմնոյ եւ արեան Միածնի Որդւոյ քոյ, որով եւ ընդ որում վայելէ քեզ փառք եւ իշխանութիւն համադերձ Հոգւովդ քով որբով:" Ճիշդ նոյն գաղափարներ, նոյն խօսքեր, նոյն աղօթքը, բայց որչափ տարբեր բացատրուած քան հայերէնին մէջ. նոր ապացոյց մ'ալ երկու բնագրաց տարբեր խմբագրութիւն ըլլալու միեւնոյն գործքին:

[113] Այս բոլոր մանր մասերը մինչեւ ճաշակման Աղօթքը Ռընտոյի քով համառօտութեամբ նշանակուած են: Մէկ երկու բան աւելի կայ հոն՝ որ հայերէնին մէջ կը պակսի: Ասորին է՝ "Ժող. Ամէն: Քհ. Խաղաղութիւն: Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում: Քահ. Եղիցի օրհնութիւն, եւն: Ժող. Եւ ընդ, եւն: Սրկ. Ահիւ: Քհ. Սրբութիւնք սրբոց: Ժող. Միայն Հայր սուրբ: Սրկ. Կացցուք բարւոք: Ժող. Գոհացուք:" Հոս կը կցուի յաջորդ աղօթքը:

[114] Ամբողջ այս խրատագիրը չկայ Ասորերէնին մէջ:

ճշմարտապէս վայելէ երկրպագութիւն քեզ ի մէնջ արժանապէս. փառք եւ պատիւ եւ գոհութիւն անվարատ փառաց.[115] որ արժանաւորեցեր զմեզ այսպիսի անճառելի բարեաց եւ ողորմութեան, զոր եւ ոչ երկնաւորաց եւ անմարմնոց արարեր։[116] Եւ այժմ աղաչեմք եւ խնդրեմք յանբաւ մարդասիրութենէ քումմէ. մի դարձուցաներ զուրախութիւնս մեր ի սուգ եւ զերգս մեր՝ յողբս. եւ մի կորագլուխ առներ զմեզ եւ ամաւթալից յաւուրն վերջին ի մեծի հրապարակին, ուր ամենայն բանք սպառին եւ գործք թագաւորեն.[117] ուր հրեշտակք եւ հրեշտակապետք եւ ամենայն երկնաւոր զաւրութիւնք ահիւ եւ դողութեամբ եկեալ կան. եւ Միածին Որդին քո դատէ անաչառապէս, եւ հատուցանէ ըստ գործոց իւրաքանչիւրոց։[118] Յայնժամ զնուաստքս եւ զդատարկացեալքս ի բարեաց գործոց մի անտես առներ. այլ ողորմութեամբ քո քաւեա. եւ մի ի դատաստան կամ ի դատապարտութիւն համարիր զմեզ աստուածային պարգեւացս. այլ ի սրբութիւն եւ լուսաւորութիւն եւ ի թողակ կենաց եւ փրկութեան։[119]

Քահ. Խաղաղութիւն ընդ ամենեսեան։ — Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում։ — Եւ զկնի հաղորդելոյն Սարկ. ասէ. Առաջի քո, Տէր, զգլուխս մեր խոնարհեցուցանեմք։ — Ժող. Առաջի քո։[120]

Քահ.ն[121] դառնայ ի ժողովուրդն եւ հաղորդէ զարժանաւորսն աստուածային աւրինացն, եւ խաչ կնքէ եւ դառնայ ի սեղանն սուրբ. լուանայ զծայրս մատանցն երկու ձեռացն գինով եւ ջրով եւ մաքրէ զգուշութեամբ։

ԱՂԱՒԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑՒՈՅ

ԺԲ. — Եւ իբրեւ կատարի ամենայն ինչ ըստ կարգին՝ որպէս եւ յայլ պատարագսն գրեալ է՝ քահ. իջանէ ի մէջ եկեղեցւոյն եւ ասէ.[122] Գոհանամք

ԺԱ. ‖345 L "եւ գործք թագաւորէն։" ‖358 L կ'երեւայ թէ ունի "գինով եւ ջրով։"

115 Առօրին՝ "Արդար է — (ոչ "արդարեւ",) ճշմարտապէս եւ ուղղապէս (Ոսկեայ՝ veldeque rationabiliter) վայելէն մեծվայելչութեան քում ամենայն գովութիւնք անսպառք, օրհնութիւնք եւ փառաբանութիւնք յաղթողականք. զի արժանաւորեցեր" եւն։

116 Առօրին՝ "Զի արժանաւորեցեր զմեզ գթութեամբդ քով այսպիսւոյ պարգեւի բարւոյ եւ երկնաւորի, այսմ անապական կերակրոյ"։

117 Առօրին՝ "...յողբս. եւ մի կորագլուխ առներ զմեզ առաջի ատենի քոյ, եւ մի ամօթալից եղիցուք յաւուր դատաստանի, յորում առնու իւրաքանչիւր ոք զպատշաճական հատուցումն. ուր հրեշտակք" եւն։

118 Առօրին պարզապէս՝ "Ուր հրեշտակք ահիւ կան, եւ Միածին Որդի քո դատէ։"

119 Աղօթքիս ամբողջ այս վերջին մասն այսպէս ունի Առօրին՝ "Այլ որպէս ամենողորմ ցուցեր մեզ զքեզ, խնայեա ի թերահաւատութիւնս մեր, ողորմեա տկարութեան բնութեանս մերոյ. մի ի դատաստան կամ ի դատապարտութիւն համարիր մեզ զայս պաշտօն քո, այլ ի սրբութիւն եւ յարթնութիւն եւ թողակ փրկութեան մերոյ։ Եւ քեզ վայելէ փառք, պատիւ եւ իշխանութիւն։ միանգամայն եւ Միածնի Որդւոյ քում եւ ամենասուրբ Հոգւոյդ քում, — ժողովուրդն. Ամէն։"

120 Այս ամէն փոքր մասերը համառօտութեամբ նշանակուած են Ոսկեայի քով՝ այսպէս. "Քհ. Խաղաղութիւն։ Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում։ Սրկ. Զկնի եւն։ Ժող. Առաջի քո։"

121 Այս ամէն խրատագիրք կը պակսին Ոսկեայի քով.

122 Նաեւ այս խրատագիրքը չունի Ոսկեայ. հապա միայն՝ "Քհ. է նոյն Բարձր։"

զքէն, որ ծնար նախ քան զյաւիտեանս՝ ի Հաւրէ լուսոյ մշտնջենաւորէ. եւ ի վերջին աւուրս[123] մարմնացար ի սրբոյ կուսէն Մարիամայ Աստուածածնէն անփոփոխելի. աղաչեմք զքեզ եւ խնդրեմք ի քէն,[124] հովանի լեր աջով քո ի վերայ մեր: Եւ զքահանայս սրբոյ խորանիս,[125] եւ զսարկաւագունս եւ զամենայն դասս պաշտաւնէից պահեա սրբութեամբ:[126] Ծերոց օգնական լեր. զմանկունս սնո եւ հասո մաքրութեամբ ի չափ հասակին բարձրագոյն գիտութեամբ:[127] Հիւանդաց առողջութիւն շնորհեա. եւ զգերեալսն փրկեա. զբանտարկեալսն արձակեա.[128] զսեւացեալսն մեղաւք լուա. զկուսանսն պահեա սրբութեամբ նշանաւ խաչի քո անսասան. զամուսնացեալսն փրկեա եւ զանկողինս նոցա մաքրութեամբ եւ պարկեշտութեամբ պահեա. զքաղցեալսն կերակրեա. աւգնական լեր որբոց եւ այրեաց:[129] Եւ որք հաղորդեցան ի սուրբ մարմնոյ եւ յարենէ քո՝ քաւեա զմեղս նոցա. եւ զամենայն ժողովուրդս քո՝ զայս եւ զկանայս, զծերս եւ զմանկունս, զմեծաւորս եւ զաղքատս, զփրկեալքս արեամբ քո, ժողովեա ի զաւիթս քո ի վերինն Երուսաղէմ, ուր ամենայն սուրբք ի Քեզ հաւաքեալ կան:[130] Եւ զմեզ[131] արժանի արա Տէր՝ աստուածային տեսոյդ քո. եւ մեծ յառագաստ քո. զմիտս մեր բեւեռեա[132] յերկիւղ քո եւ ի սէր. եւ լուսաւորեա զաչս մեր տեսանել զքեզ.[133] եւ լից զբերանս մեր աւրհնութեամբ, եւ զսիրտս մեր ցնծութեամբ եւ ուրախու-

---

ԺԲ. ‖367 L “սնոյ եւ հասոյ„ եւն, ինչպէս այլուր: ‖375 L “ժողովեա զգաւիթս քո„ եւն: ‖376 Նոտրգիր մէ բառին համար դիտել կու տայ Վ. Հ. Յովհաննէս թէ՝ “Պակասէր այս բան յօրինակին եւ դատարկ էր տեղին. եդեալ է յայլմէ ումեմնէ ի մերոց Հարցս:„

[123] “Ի վերջին աւուրս„, ինչպէս նաեւ “Մարիամայ Աստուածածնի„ չունի Ասորին:

[124] Ասորին՝ “Գոհանամք եւ խնդրեմք զի հանգիցէ աջ քո հանապազ ի վերայ մեր:„

[125] Ասորին կը յաւելու “փառաւորեա„ (gloria affice, զքահանայս խորանի քո:)

[126] Ասորին քահանայից համար աղօթելէն ետքը պարզապէս կ'ըսէ՝ “Եւ զպաշտաւորս քո պատուեա„ (in honore constitue.)

[127] Ասորին՝ “Զծերս զարդարեա հեզութեամբ, զյուզմունս (impetus, տատանկութիւն, բուռն լինել եւն) երիտասարդաց սանձեա. զմանկունս կրթեա ի զգաստութեան եւ ի բարձրագոյն կատար գիտութեան հասո:„

[128] Ասորին չունի “զգերեալսն փրկեա, զբանտարկեալսն արձակեա:„

[129] Ասորին՝ “Խնամակալ լեր որբոց. եւ մխիթարիչ այրեաց.„ (Ռընոտոյ՝ confordator, զօրացուցիչ. Թերեւս կարդալու է consolator.)

[130] Վերջին նախադասութիւններս շատ տարբեր են Ասորւոյն մէջ, որ որբոց եւ այրեաց համար աղօթելէն ետքը՝ կ'ըսէ. “Խնայեա ի նոսա՝ որք ընկալան զմարմին քո. եւ մաքրեա կատարելապէս զնոսա՝ որք արբին յարենէ քումմէ: Օրհնեա զայնոսիկ՝ որ հասին փրկութեան խաչիւ քով. եւ սրբեա զգաւիթս հօտի քոյ. զաշխարհս քո ած ի փարախ քո. զգաւիթս քո հաստատեա ի վարդապետութիւնս քո. եւ իւրաքանչիւր ումեք յաստիճանի եւ ի կարգի իւրում ողորմութեամբ քով այցելու լեր: Եւ զմեզ„ եւն:

[141] Պարզ “զմեզ„ դերանուան տեղ ունի Ասորին՝ “զմեզ զծառայս քո եւ զպաշտօնեայս քո ի քահանայութեան„ եւն: — “Տեսոյդ քո„ բառուծին տեղ Ասորին ունի՝ “ի բնակարան„ կամ “յօթեւան„ (ad habitaculum tuum):

[132] “Բեւեռեա„ բային տեղ Ռընոտոյ “հաստատեա„ կը կարդայ (mentes nostras firmas effice in dilectione tua.) բառ այսմ նաեւ “յերկիւղ„ բառը չկայ Ասորւոյն քով. այլ պարզապէս՝ “ի սէր քո:„

[133] Ասորին՝ “Աչք մեր տեսցեն զահաւոր մեծվայելչութիւն քո:„

*թեամբ.*[134] *եւ զշնորհս մեր զարդարեա ի փառաբանութիւն, աւրհնել զքեզ ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ:*[135]

*Քահ.* **Կատարումն:**[136]

*Ու քաշխի նշխարն. եւ արձակին ի տունս:*[137]

---

134 Ասորին չունի "եւ զսիրտս մեր՝ ցնծութեամբ եւ ուրախութեամբ" բառերը: Նախընթաց խօսքին կերպն ալ՝ ըստ Ռընոտոյի կրաւորական է՝ "Բերանք մեր լցցին օրհնութեամբ:"

135. Ասորին՝ "Շրթունք մեր բարբառեսցեն (pronuncient), Տէր, զգովութիւնս քո եւ Հօր քոյ օրհնելոյ եւ երանելոյ եւ զՀոգւոյդ քոյ կենդանւոյ, սրբոյ, կենդանարարի եւ էակցիդ քոյ:" Հոս կը կցուի՝ "Ժողովուրդն. Ամէն:"

136 Ասորին չունի այս տողն, որ հարազատ ալ չ'երեւար, ուրիշ պատարագաց վերջերէն առնուած ըլլալով: Անոր տեղ կ'ըսէ Ասորին՝ "Աղ. Օրհնեա Տէր: Քհ. Օրհնեցէ զամենեսեան:" այսինքն՝ անշուշտ "Օրհնեալ եղերուք" եւն, կամ անոր համապատասխանող բան մը:

137 Ասորին նախընթացով կ'աւարտի. ուստի չունի նշխար բաժնելու այս խրատագիրը:

## Յ.

*Նախասրբելոց Պատարագ:*

---

### Ա.

### ԱԶԴՈՒՄՆ

*“Նախասրբելոց„ կոչուած Պատարագովս “Գր. Տրամախօսի„ կամ ըստ Հայերէնի “Ս. Վասիլիու„՝ կը լրանայ բիւզանդեան եկեղեցւոյ մէջ ցայսօր տիրող երեք պատարագներու խումբը: Այս պատճառաւ միայն որոշեցինք դուրս չթողուլ յաջորդ բնագիրն ալ, որուն հայերէն թարգմանութիւնը չի կրնար համեմատուիլ բիւզանդեան միւս երկու պատարագաց (նորագոյն “Բարսղի„ եւ “Ոսկեբերանի„) հայերէն թարգմանութեանց հետ: Բաց աստի ասոր մասին կրնանք թերեւս աւելի ապահովութեամբ ենթադրել որ Հայ-հոռոմոց քով գործածութիւն ունեցած ըլլայ:*

*Պատարագիս հնութեան չափին, հեղինակին, բնագրին հրատարակութեանց եւն մասին վերն արդէն խօսած ենք միւս բիւզանդականաց հետ ի միասին.* (*տես էջ* 342—52, *յատկապէս՝ էջ* 348—49.) *ուստի հոս կրկնել աւելորդ է: Բնագրի մանրամասնութիւնք ալ կրնան տեսնուիլ յաջորդ ծանօթութեանց մէջ, ուր հայերէնը համեմատուած է յունականին հետ, եւ տարբերութիւնք նշանակուած: Ընդհանրապէս հայերէնը քանի մը յատուկ աղօթքներ ունի, որ չկան յունական օրինակներուն մէջ.* (*տես ծան.* 35, 49.) *երկար աղօթք մը՝ որ միայն համբաւաւոր* Grottaferrata *օրինակին մէջ կը գտնուի* (*ծան.* 31.) *տեղ տեղ նաեւ կտորներ միայն Բարբերինեանին համեմատ.* (*ծան.* 53 *եւն.*) *բայց առհասարակ Բարբերինեանէն շեղելով եւ աւելի սովորական օրինակներու համընթաց ըլլալով.* (*ծան.* 5, 17 *եւն:*) *Վերջին կէտս ինքնին կրնար ցուցընել որ հայերէն թարգմանութիւնն աւելի ուշ է ժամանակաւ քան բիւզանդական Բարսղի եւ Ոսկեբերանի կոչուած նուիրագործութեանց հայախօս խմբագրութիւնները:*

*Յաջորդ բնագիրը միակ օրինակի մը համեմատ հրատարակած ենք: Լիոնեան օրինակին ընթերցուածը չգտանք ընդօրինակուած Մեծ. Հ. Յովսեփայ Վ. Գաթրճեան թղթերուն մէջ: Բայց անոր համազօրն է հրատարակածնիս: Մեծ. Հ. Յովհ. Վրդ. Թորոսեան բարեհաճած էր խաւրել մեզ ընդօրինակութիւն մը Վենետկոյ Թ.* 1145 *ձեռագրին, որուն բնագիրը նոյն Լիոնեան օրինակն է: Վենետկոյ օրինակին համար հետեւեալը կը քաղենք Վ. Հ. Յովհաննու թղթէն* (11 *Մայիս* 1896.) *“Ներկայ գրութիւնս ալ կը գտնուէր միեւնոյն ձեռագրին մէջ, որ է* Լեւոնեան խորհրդատետր *կոչուածն, եւ որ* 1145 *Թիւը կը կրէ ձեռագրատանս, յէջն* 58: *Սոյն պատարագն ոչ ամբողջ՝ այլ համառօտեալ եւ կրճատեալ՝ կը գտնուի նաեւ մի ուրիշ ձեռագրի մէջ, որ մատենադարանիս* 1411 *Թիւը կը կրէ, ուր կը գտնուին նաեւ Ս. Աթանասի եւ Ոսկեբերանի պա-*

*տարագներ են։ Գրիչն է Թորոս ոմն, գրոյն ստացողն «Նիկողայոս սարկաւագ քուերորդի կաթուղիկոսին Հայոց Տէր Կոստանդեայ„ են։ ... Կրնաք ապահով ըլլալ որ (ընդօրինակութեան մէջ) թերի բան չկայ. բաղդատեցի զայն ձեռագրին հետ։„*

*Ըստ այսմ նաեւ յաջորդ բնագիրը Լիոնեան հաւաքման կը վերաբերի, եւ նաեւ ասով կապուած է նախընթացներուն հետ. (տես վերն էջ 82, ծան. 4։) Միւնհէնի օրինակը չունի այս ալ՝ նման յետին կտորներուն հետ։*

## Բ.

## ԲՆԱԳԻՐ ՆԱԽԱՍՐԲԵԼՈՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ

*ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՊԱՏԱՐԱԳ ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ ՊՐՈԺԻԱԶՄԷՆՈՍ, ԱՐԱՐԵԱԼ ՍՈՒՐԲ ՀԱՒՐ ՄԵՐՈՅ ՎԱՍԻԼԻՈՒ.*

### ՆԱԽԵՐԳԱՆ

Ա· — [2] *Զգենու քահանայն եւ երթայ յառաջադրութեան սեղանն, եւ դնէ զսուրբ խորհուրդն եւ ծածկէ. եւ ասէ զաղաւթս զայս որ է սկիզբն.* Տէր Աստուած մեր, որ ցուցեր մեզ զմեծ փրկութեան խորհուրդս. դու բաւականս

Ցաւօք բնագրին հրատարակութեան համար մի միակ օրինակ մ'ունէինք առջեւնիս, այսինքն Վենետկոյ Թ. 1145 ձեռագրէն ընդօրինակութիւն մը խնամով Մեծ. Հ. Յովհաննու Վ. Թորոսեան։ Վենետկոյ ձեռագրին հիմք ըլլալով դարձեալ Լիոնի յաճախ յիշուած օրինակը՝ հոս ալ L համառօտութեամբ կը նշանակենք անոր ընթերցմունքը։ Ըստ այսմ վերը դրուած բնագիրը ճշգիւ նոյն է Լիոնեան կամ Վենետկոյ Թ. 1145 օրինակին հետ. միայն ուր պէտք էր՝ ուղղած ենք, եւ ձեռագրին սխալ կամ անյարմար ընթերցումը հոս նշանակած L տառով։ Հրատարակութեանս կերպին համար ալ կ'արժէ այն ամէնն, զոր ըսինք նախընթացներուն համար, ի մասնաւորի ալ եւ հրամայականի ու ուղղագրութեանց մասին։ Խորագիրը (Նախերգանք, Խաղաղականք եւն) եւ Ա—ԺԸ հատուածոց բաժանմունք մերն են։ ՀՐՏՐ.

‖[2] Խորագիր։ L կը գրէ "Պրոժիազմէնոս,, զոր գոնէ ուղղելու է "Պրոժիասմէնոս.,, հինը "Պրոյեգիասմենոս,, պէտք է որ գրէին։ Հոս լուսանցքի վրայ աւելցուած էր ձեռագրին մէջ՝ "այն է Նախասրբելոց,, մեկնութիւնը։

Նախասրբելոց Պատարագիս հայերէնը կը համեմատենք Danielի հրատարակած բնագրին հետ (A. Dan., p. 439–450 Liturgia Praesanctificatorum), ինչպէս նաեւ Բարբերինեան օրինակին հետ (Brightman, p. 345—352.) եւ Goarի հրատարակութեան հետ (p. 192—200, ծանօթութիւնք եւ նմոյններ անդ՝ 187—209։) Ինքնին կը հասկցուի որ յունարէն օրինակաց իրարմէ ունեցած բաւական մեծ տարբերութիւնք չենք նշանակեր, բայց միայն ուր հայերէնին ընթերցման լոյս կրնան տալ։ Ուր Բարբերինեանը կը նշանակենք՝ B տառով յառաջ կը բերենք. իսկ "G,, կը նշանակէ յոյն բնագիրն ըստ Danielի եւ (G) ըստ Goarի հրատարակութեան.

[1] Խորագրի մասին տես վերը՝ էջ 349։ "Պատարագ Քառասնորդաց Պրոժիազմէնոս,, G միայն (առ G) 'Η θεῖα λειτουργία τῶν Προηγιασμένων. ("Աստուածային Պատարագ Նախասրբելոց։,,)

Ա. [2] Սկզբան մասերս նոյն չեն յունարէնին հետ։ "Որ է սկիզբն,, Թերեւս հայ գրչի մը յաւելուածն է։ Աղօթքը ("Տէր Աստուած մեր որ ցուցեր,, եւն) չենք գտներ հոս յունականաց (եւ ոչ Bի) քով, եւ քաղուածք մըն է Բարսղի պատարագի Հաւատացելոց Ա. Աղօթքէն. (տես վերը՝ էջ 192, համ. Է։) Յունականքն զգեստաւորման մասին խրատագիր մը գնելէն ետքը կը սկսին սարկաւագին "Օրհնեա Տէր,, եւ քահանային "Օրհնեալ թագաւորութիւն,, եւն ըսելով։ "Եւ ինկէ զխորանն քհ.,, խորագիրն ունի միայն B գրելով՝ "Եւ խաչաձեւ կնքելով ասէ. Օրհնեալ է Աստուած.,, որ տակէ յառաջ ալ խրատ կուտար ըսել քահանային "[illegible],, (այսինքն "խունկ մատուցանեմ,, եւն, տես վերն էջ 356), որ ըստ այսմ համապատասխանող մասն է հայոյն "Տէր Աստուած մեր,, եւն առաջին աղօթքին։ B ընդհանրապէս կը չեղի սկիզբներն

*արա զմեզ մատուցանել քեզ զընծայս անարիւն եւ զպատարագս նախասրբեալ ի փառս եւ ի պատիւ Քրիստոսի քո. զի սուրբ եւ փառաւորեալ է յամենայնի մեծվայելուչ անուանդ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս: Եւ խնկէ զխորանն քահանայն:*

*Սարկաւագն. Աւրհնեա տէր: — Քահանայն. Աւրհնեալ թագաւորութիւն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ: — Ժողովուրդն ասեն. Աւրհնեմ անձն իմ զՏէր. Տէր Աստուած իմ մեծ եղեր յոյժ: Ի լման զփոխն:*[3]

### ԽԱՂԱՂԱԿԱՆՔ

Բ. — *Սարկաւագն.* Խաղաղութեամբ զՏէր աղաչեսցուք:[4] — *Ժողովուրդ.* Տէր ողորմեա: — [*Սար.*] Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, եւ բարեկարգութեան սրբոց եկեղեցեաց եւ ամենեցուն միաւորութեան: — Վասն սուրբ տանս այսորիկ եւ որք հաւատով եւ ահիւ մտանեն ի սմա զՏէր աղաչեսցուք: — Վասն եպիսկոպոսապետի մերոյ կենաց եւ փրկութեան, եւ որ ի Քրիստոս սարկաւագութեան եւ ամենայն ժառանգի եւ ժողովրդեան: — Վասն բարեպաշտ եւ աստուածապահ թագաւորին մերոյ եւ ամենայն զինուորեալ մանկանց նորա, զՏէր աղաչեսցուք: — *Ժողովուրդ.* Տէր ողորմեա: — [*Սար.*] Վասն յաղթող լինելոյ եւ հնազանդեցուցանելոյ ընդ ոտիւք նոցա զամենայն թշնամի պատերազմող, զՏէր: — *Ժող.* Տէր ողորմեա: — [*Սար.*] Վասն քաղաքիս այսորիկ եւ ամենայն քաղաքաց եւ գաւառաց. եւ որք հաւատով բնակեալ են ի նմա, զՏէր: — *Ժող.* Տէր ողո.: — [*Սար.*] Վասն ճանապարհորդաց, նաւորդաց, հիւանդաց, վաստակաւորաց, գերելոց, եւ ամենեցուն փրկութեան, զՏէր: — *Ժող.* Տէր ող.: — [*Սար.*] Վասն փրկելոյ զմեզ յամե-

---

Ա. ‖[8–9] L "Զի փառաւորեալ է յամենայն մեծավայելուչ անուանդ„ ունի:
Բ. ‖[15] L "Խաղաղութեամբ զտէր աղաղակեսցուք:„ ‖[18] L "Վասն սուրբ տանս այսմիկ„ ունի. յաջորդ "մտանեն ի սմա„ պահեցինք՝ սովորական ըլլալով քանի մ'այս կարգի բնագրաց ալ. ‖[25] L "Վասն քաղաքիս այսմիկ„ ունի:

յունականներէն եւ շատ մասամբ նաեւ հայերէնէն:

³ Սաղմոսասացութեան ժամանակ կը հրամայէ Ց (նաեւ B) թէ "քահանայն ասասցէ զաղօթս ճրագացն„ (τὰς εὐχὰς ἐπιλέγει τοῦ λυχνικοῦ.) Այս "Ճրագաց„ կոչուած աղօթքներն երեկոյեան ժամուն՝ եօթն են Ցունաց քով. մեր ժամագրոց մէջ մէկ հատ միայն կայ այժմ ("Լոյս զուարթ„ կամ ճրագալուցի սաղմէն ետքը), որ կը սկսի՝ "Օրհնեալ Տէր որ բնակեալդ ես ի բարձունս„ եւն: Այս աղօթքը մերոնք նաեւ "Պետրոսի Հայրապ. եղբօր Գր. Նիւսացւոյ„ կ'ընծայեն. (տես Ցուցակ Ձեռգր. մեր Մատենադ. էջ 512 եւ 689:)

Բ. ⁴ Հայերէնին "զՏէր աղաղակեսցուք„ կարծենք գրչութեան պարզ սխալ մըն է, ուստի ուղղեցինք "աղաչեսցուք.„ ինչպէս նաեւ յունարէնը կը պահանջէ այս շատ յաճախ կրկնուած խաղաղականներուն՝ (ἐν εἰρήνῃ τοῦ Κυρίου δεηθῶμεν.) Ցաջորդ խաղաղականք Danielի քով համառօտութեամբ նշանակուած են, նոյնպէս Goar եւ այլք: Տես նոյները Բարսղի եւ Ոսկեբերանի պատարագաց մէջ շատ անգամ համեմատուած, ուստի հոս չենք կրկներ: Հայոյն մէջ կը պակսի հոս սկիզբն "վասն ի վերուստ խաղաղութեան„ եւն մասը, նոյնպէս "վասն ճանապարհորդաց„ եւն անկէ յառաջ՝ "վասն բարեխառնութեան օդոց„ եւն մասը. ընդհակառակն "վասն հոգւոց հանգուցելոց„ եւն հոս չեն նշանակեր յունականք, եւ նման պէսպիսութիւնք:

նայն նեղութենէ, ի բարկութենէ եւ ի վշտաց, զՏէր: — Վասն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ: — Եւ եւս մի.: — Զանձինս: — Ողորմեա մեզ: — [Քահ.] Զի վայել է քեզ ամենայն փառք, պատիւ, երկրպագութիւն այժմ եւ միշտ եւ յաւ.:

### ԱՂԱՒԹ Ա. ԱՍՏԻՃԱՆԱՑ[5]

Դ. — *Սաղմոս* Ի նեղութեան իմում ես առ Տէր: *Փոխն ի լման ասի երեքն: Ու քահանայն աղաւթէ ի ծածուկ:* Տէր գթած եւ ողորմած, երկայնամիտ եւ բազումողորմ. ունկնդիր աղաչանացս. եւ ընկալ զձայն պաղատանաց մերոց. արա ի մեզ նշան բարութեան. առաջնորդեա մեզ ի ճանապարհս քո՝ ճշմարտութեամբ գնալ. ուրախ արա զմիտս մեր երկիւղիւ անուանդ քում սրբոյ: Զի մեծ ես դու եւ առնես սքանչելիս, եւ դու միայն ես Աստուած, եւ ոչ ոք է նման քեզ յաստուածս, Տէր կարող յողորմութիւն, բարերար եւ զաւրաւոր,[6] աւգնել, այց առնել, եւ փրկել զյուսացեալս յանուն քո սուրբ:

*Սարկն. ասէ.*[7] Ընկալ կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ: — Զամենասրբուհին զանարատն: — *Քահ.* Զի քո է կարողութիւն եւ քո է թագաւորութիւն եւ զաւրութիւն, եւ քեզ փառք յաւ.:

### ԱՂԱՒԹ Բ. ԱՍՏՍՃԱՆԱՑ

Դ. — [8]*Սաղմոս՝* Ո յուսայ ի Տէր, որպէս լեառն Սիովն. *ի լման զփոխն:*

*Աղաւթք երկրորդ փոխածայնին.* Տէր մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զմեզ. եւ մի բարկութեամբ քով խրատեր զմեզ. այլ արա ընդ մեզ ի քոյոց պարգեւացդ.[9] բժիշկ եւ ողջացուցիչ անձանց մերոց. առաջնորդեա մեզ ի նաւահանգիստ կամաց քոց. լուսաւորեա զաչս սրտից մերոց առ ի գիտել

Դ. ‖38 Լ այս կարգի ընթերցմունք ("ուրախ արա ... երկիւղիւ անուանդ քում սրբոյ" եւն) պահեցինք, յաճախ են այսպիսիք վերջին ժամանակի թարգմանութեանց մէջ, ինչպէս վերն ալ յաճախ տեսանք: ‖42 Լ ինչպէս բանք, "կեցոյ." նոյնպիսիք այլուր ալ:

Դ. [5] Աստէ սկսեալ մինչեւ "Աղօթք Երրախայից" (Հատ. Թ) չունի B. բայց ունին Daniel եւ Goar. "Աղօթք աստիճանաց" մենք դրինք ըստ յունին Εὐχὴ τῆς α' στάσεως, եւ նոյն կոչմամբ նաեւ յաջորդները: — Ա. Աստիճանաց աղօթքը բոլորովին նոյն է յունարէնին հետ:

[6] Յ այսպէս՝ "Կարող (δυνατὸς) յողորմութեան, եւ բարերար ի զօրութեան" (ἀγαθὸς ἐν ἰσχύϊ.) Կից "յայց առնել" գրուած է "մխիթարել. խնամել" (Յ. παρακαλεῖν.)

[7] Յ. նախ կ'աւելցնէ՝ "Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:" — Յաջորդն ի Յ. "Զի քո է ... եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ" եւն:

Դ. [8] Յունարէնն ամէն մէկ աղօթքին սկիզբն չի նշանակեր Սաղմոսներն, այլ վերն մի անգամ նշանակած էր որ Աստիճանաց Սաղմոսները կ'ըսուին իւրաքանչիւր աղօթքէն յառաջ: Այս կարգի մանրամասնութեանց տարբերութիւնք աննշան ըլլալով՝ չենք նշանակեր մի առ մի: — "Աղօթք երկրորդ փոխայնին" կ'ըսէ հոս հայն. յոյնը նոյն է (տես Դրան. 5) Εὐχὴ τῆς β' στάσεως.

[9] Անյաջող թարգմանութիւն է՝ "այլ արա ընդ մեզ ի քոյոց պարգեւացդ", ուր յոյնն է κατὰ τὴν ἐπιείκειάν σου. (...ըստ արդարութեան քում:")

զծշմարտութիւն քո. եւ շնորհեա մեզ զաւրս զայս խաղաղութեամբ եւ առանց մեղաց եւ զամենայն ժամանակս կենաց մերոց, բարեխաւսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին եւ ամենայն սրբոց քոց։

*Սարկն.* Եւ եւս խաղաղ։ — Ընկալ, կեցո, ողորմեա եւ պահեա։ — Զամենասրբուհին, զանարատն, զառաւել փառաւորեալ տիրուհին մեր զԱստուածածինն եւ զմիշտ կոյսն Մարիամ յիշեսջիք եւ նոքաւք զՏէր։ — *Ժող.* Տէր ողորմ.։ — *Քահ.* Զի բարերար եւ մարդասէր Աստուած գոլով, եւ քեզ վայելէ[10] փառք, իշխանութիւն եւ պատիւ։

## ԱՂԱԻԹ Գ. ԱՍՏԻՃԱՆԱՑ

Ե. — *Սաղմոս.* Ի խորոց կարդացի առ քեզ Տէր, Տէր լուր։

*Աղաւթք Գ. փոխածայնին: Քահ. ի ծածուկ.* Տէր Աստուած մեր յիշեա զմեզ զմեղաւորքս եւ զվերջին[11] ծառայքս քո. որք եկեալ աղաչեմք զսուրբ եւ զերկրպագելի անուն քո. մի յամաւթ առներ զմեզ ի կամաց ողորմութեան քո, այլ շնորհեա մեզ Տէր զամենայն խնդրուածս փրկութեան քո. եւ արժանի արա զմեզ սիրել եւ երկնչել ի քէն յամենայն սրտից մերոց եւ առնել յամենայնի զկամս քո։

*Սարկն.* Ընկալ, կեցո եւ ողորմեա։ — Զամենասրբուհի Աստուածածին, զանարատն, զառաւել փառաւ.։ — *Քահ. ի ձայն.* Զի դու ես Աստուած մեր. Աստուած յողորմել եւ ի կեցուցանել. եւ քեզ փառս վերառաքեմք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ։

Զ. — *Ու սկսանին.*[13] Տէր կարդացի առ քեզ եւ լուր ինձ. շարականաւ. նախ զինքն եղանակեն. քանզի կրկին է. Կիրէ էկէկրակսա պրօսէ, էյսակու-սօնմօ Կիրէ. Տէր կարդացի առ քեզ, եւ լուր ինձ. Նայեաց ի ձայն. զմար-

Դ. ‖[47] L կ՚երեւայ թէ ունի «սրտմտութեամբ քո։» ‖[49] L «ողջացուցիչ։» ‖[54] L հոս «կեցո.» նոյնպէս ի տողն 67։
Ե. ‖[72—3] Նօտրգիր նշանակուած յունախօս տողին դիմաց լուսանցքի

[10] ինչպէս ուրիշ տեղեր ալ տեսանք, այս բանաձեւին տեղ յոյնը կ՚ըսէ «Էս տին տօքսա Փա-տրօսիմ», Հօր եւ Որդւոյ» եւն։

Ե. [11] Լաւ թարգմանութիւն չէ «զվերջին ծառայքս քո.» յունարէնն է՝ ἀχρείων δούλων («զանպիտան ծառայքս։») Աւելի անյարմար է՝ «մի յամօթ առներ զմեզ ի կամաց ողորմութեան քո». որ բառ յունարէնին (Ց՝ ἀπὸ τῆς προσδοκίας τοῦ ἐλέους σου) ըլլալու է՝ «յուսեկալութենէ ողորմութեան քո։»

[12] Այս «քո» անտեղի է. եւ պէտք է ջնջել։ Աղօթքին ծայրն ալ լաւ չէ «եւ արա» եւն, այլ պէտք է ուղղել՝ «եւ առնել յամենայնի զկամս քո.» ինչպէս կը պահանջէ յունարէն բնագիրն ալ։

[13] Այս ամէն խրատագիրքն տարբեր են յունականին մէջ, ուր հոս նախ կը հրամայէ քահանային առնուլ «նախատօրեալ» հացը դնել մաղզմայի վրայ, յետոյ գինի եւ ջուր ի բաժակն, եւ խնկել եւ ծածկել, առանց բան մ՚ըսելու բայց միայն՝ «Աղօթիւք սրբոց հարց։» Ապէ ետքը կը հրամայէ ըսել ՃԽԲ եւ ՃԽԳ սաղմոսները, յանուանէ Κύριε ἐκέκραξα եւն («Տէր կարդացի» կամ ինչպէս բոլորովին աւելորդ տեղ տառադարձեր է հայն՝ «Կիրէ կեկրակսա» եւն։) Չենք գիտեր ինչու՝ հոս եւ ուրիշ տեղեր թարգմանիչն այսպիսի յունարէն տողեր դրեր է, մինչդեռ ուրիշ տեղերը նոյն կարգի Սաղմոսաց եւն կոչմունք դրած էր հայերէն, ինչպէս պէտք է։

*տիրոսին, զպըրոցն, զառաջին տունն կրկին: փառք. այժմ եւ միշտ: Քահն. ի մուտն. իսկ եթէ հասանէ տաւն Մկրտչին կամ սուրբ Քառասնիցն՝ աւետարանաւն զայցէ քահանայն:*

### ԱՂԱՒԹՔ ՄՏԻՑ

*Աղաւթք մտի ճրագալուցին.*[14] Յերեկոյի, ի վաղորդայն եւ ի հասարակ աւուր աւրհնեմք, գովեմք, գոհանամք, եւ աղաչեմք զքեզ Տէր ամենայնի. ուղիղ եղիցին աղաւթք մեր որպէս խունկ առաջի քո. եւ մի խոտորեցուցաներ զսիրտ մեր բանիւք չարութեամբ.[15] այլ փրկեա զմեզ յամենայնէ որք որսան զմեզ. զի առ քեզ Տէր, Տէր, են աչք մեր. եւ ի քեզ եմք յուսացեալ. մի յամօթ առներ զմեզ, Աստուած մեր. զի աւրհնեալ ես յաւիտեանս ամէն:

*Ժող.*[16] Լոյս զուարթ սուրբ փառաց անմահի Հաւրդ երկնաւորի, սրբոյ կենարարին Յիսուսի Քրիստոսի: Եկեալքս ի մտանել արեգականն՝ տեսաք զքեզ

---

վրայ նշանակուած էր ի L (կամ ճշդիւ եւս Վենետկոյ Թ. 1145 ընդօրինակութեան մէջ՝ ի Հարց Վենետկոյ) համապատասխանող յունականքն՝ Κύριε ἐκέκραξα πρὸς σὲ· εἰσάκουσόν μου Κύριε. ‖74 L "Զառաջին" մենք դրինք, L "առաջին տունն" եւն: ‖78 L "վաղորդեան:"

Զ. ‖84—89 Աղօթքս եւ "Լոյս զուարթն" ունիմ նաեւ ուղղակի Լիոնի օրինակէն ընդօրինակուած. վերը դրուած բնագրէն միայն սա տարբերութիւն կայ որ Լիոնեանն ունի՝ "ի վաղորդեան." "յաւիտեանս ամէն." եւ "որ զօ զկենդանութիւն," (որ յայտնի կը ցուցընէ նախնական "որ տաս" ընթերցումը:)

Զ. [14] Յունարէնին խորագիրն է՝ Εὐχὴ τῆς εἰσόδου. ("Աղօթք մտից:") Հայերէնին "ճրագալուցի" ըսելն աւելի "Լոյս զուարթի" կը վերաբերի: Երկուքն ալ նոյն են յունարէնին հետ:

[15] Ըստ յունին ոչ թէ "բանիւք չարութեամբ", այլ՝ ("մի խոտորեցուցաներ...") է բանս չար է խորհրդոց չարութեան:" — "Որք որսան զմեզ", Յոյն՝ "որք որսան զհոգիս մեր:"

[16] "Լոյս զուարթն" տաղն, որ մեր ժամերգութեան մէջ "Երգ Կիրակամտից" եղած է, եկեղեցւոյ ամենահին տաղերէն է՝ նշանաւոր իւր պարզութեամբն բայց իմաստից վսեմութեամբն. եւ կայ արդէն Սհմոդր. Առաքելոց գրութեան մէջ (Գիրք Է. գլ. 47 եւն, ուր նաեւ "Փառք ի բարձունս." եւ "Օրհնեցէք մանկունք զՏէր" տաղերն, որ երկուքն ալ կան մեր ժամերգութեան մէջ,) իբրեւ "Երգ Երեկոյեան" (ὕμνος ἑσπερινός) կամ ὕμνος ἐπιλύχνιος (Երգ յետ ճրագաց). Յունարէն ժամագրոց մէջ ալ Երեկոյեան ժամակարգութեան մաս եղած է: Հայերէնը քանի մը մանր կէտերու մէջ միայն շեղում կը ցուցընէ յունարէնէն: Աւելորդ չենք համարիր դնել հոս յունարէնն տող առ տող եւ իւրաքանչիւրին տակը հայերէնը ճշդիւ յունարէնին համաձայն՝

Φῶς ἱλαρὸν ἁγίας δόξης,
Լոյս զուարթ սուրբ փառաց
ἀθανάτου Πατρὸς οὐρανίου,
անմահի Հօրն երկնաւորի
ἁγίου, μάκαρος,
սրբոյ, երանելի, (Հայը՝ "կենարարի")
Ἰησοῦ Χριστέ.
Յիսուս Քրիստոս:
Ἐλθόντες ἐπὶ τὴν ἡλίου δύσιν,
Եկեալքս ի մտանել արեգական
ἰδόντες φῶς ἑσπερινόν,
տեսեալ (Հ. "տեսաք") զլոյս երեկոյեան (Հ. "երեկոյին")
ὑμνοῦμεν Πατέρα, Υἱὸν
օրհնեմք զՀայր, զՈրդի
καὶ ἅγιον Πνεῦμα Θεόν.
եւ զսուրբ Հոգին Աստուած:
Ἄξιος εἶ ἐν πᾶσι καιροῖς
Արժանի ես յամենայն ժամ(անակս)
ὑμνεῖσθαι φωναῖς αἰσίαις,
օրհնել ձայնիւք զուարթութեան (Հ. "երգովք")
Υἱὲ Θεοῦ, ζωὴν ὁ διδούς,
Որդի Աստուծոյ, որ տաս զկենդանութիւն,
διὸ κόσμος σὲ δοξάζει.
վասն որոյ աշխարհս զքեզ փառաւորէ:

Ժամագրոց մէջինը միայն վերջը քիչ մը կը շեղի. հոս տող մ'աւելի ունի "Եւ ամենեքեան

լոյս երեկոյիս. աւրհնեմք զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին Աստուծոյ. եւ ամենեքեան ասեմք Ամէն: Արժանաւորեա զմեզ յամենայն ժամ աւրհնել ձայնիւ երգով զանուն փառաց ամենասուրբ Երրորդութեանդ՝ որ տայ զկենդանութիւն. վասն որոյ եւ աշխարհս տաւնէ:

## ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ

Է.[17] — Դպիրն մեսեդի. մարգարէք ի ծննդոց: Եւ յորժամ ասէ զմեսեդին՝ Սարկն. Սոփիա: — Քահ. լուսով տեսանազրէ եւ ասէ. Լոյս Քրիստոսի երեւեցի ամենեցուն: — Ընթերցաւղ. Յառակաց Թղթոյն է ընթերցուած: Իսկ զկնի ընթերցուածոյն պաշտէ. Ուղիղ եղիցին:

Աղաւթք Ուղիղեղիցոյն. Գիր Տէր պահապան բերանոյ իմոյ ոչ խաւսել զչարութիւն. այլ տարածմամբ ձեռաց գոչել՝ Ուղիղ եղիցին աղաւթք իմ որպէս խունկ առաջի քո, Տէր. փրկեա եւ կեցո զմեզ. որպէս զի արժանի լիցուք փառաւորել զանուն քո սուրբ. այժմ եւ միշտ եւ յաւ.: — Ժող. Ուղիղ եղիցի: Փառս տալ. Տէր կարդացի: — Ժող. Ուղիղ եղիցի: — ՔահՆ. Գիր, Տէր, պահապան: — Ժող. Ուղիղ եղիցի: Փառս տան. Եւ մի խոտորեցուցանէր զմեզ ի պատուիրանաց քոց: — Ժող. Ուղիղ եղիցին աղաւթք իմ: (Փառս տալ.) Ուղիղ եղիցին: — Ժող. Համբարձումն ձեռ.: — Իսկ ի տաւն Մկրտչին եւ սուրբ Քառասնիցն, յորժամ ասէ Սարկն. Ընկալ, կեցո: Զամենասրբուհին: Քահ. Զի սուրբ ես Աստուած մեր եւ քեզ զերեքսրբեան աւրհնութիւնս մատուցանեմք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն, այժմ եւ միշտ:

Եւ քահ. ասէ զաղաւթն. Աստուած սուրբ, որ ի սուրբս բնակեալ: Խնդրէ ի Պատարագ Ոսկիբերանին: Եւ սկսանին եկեղեցին զԵրեքսրբեանն: Դպիրն ասէ զմեսեդին եւ կարդայ զԱռաքե[ա]լն. եւ Սարկ. զաւետարանն:

Եւ զկնի աւետարանին Սարկն. քարոզէ բարձր. Ասասցուք ամենեքեան [Տէր ողորմեա,[18]] յամենայն անձնէ եւ յամենայն մտաց. Տէր ամենակալ՝

---

Է. ‖[92] L "սոփիայ:" ‖[95] L "Աղօթք ուղեցոյն:" ‖[98] L "Ուղեցի" փխ. "Ուղիղ եղիցի." ինչպէս նախընթացին մէջ, եւ յաջորդ տողերու մէջ չորս անգամ ալ: ‖[101] Փակագծեալ "փառս տալ" խրատագրին համար կը նշանակէ Վ. Հ. Յովհաննէս թէ "Այս բանք յաւելեալ էին յետոյ կապարեայ գրչաւ. տեղին դատարկ էր:"

ասեմք ամէն." անկէ ետքն ալ այսպէս շրջուած է՝ "Արժանաւորեա զմեզ... օրհնել ձայնիւ երգով զանուն փառաց ամենասուրբ Երրորդութեանդ: Որ տաս (ոչ "տայ", ինչպէս են տպագիրքն) զկենդանութիւն" եւն: Պատարագին Թարգմանողը հայերէն ժամագրքէն առած գրած է հոս. բայց վերջը կը կարդայ "աշխարհս տօնէ," չենք գիտեր ինչու. ("փառաւորէ" մինչդ յունարէնին յարմար Թարգմանութիւնն է:) իսկ "Յիսուսի Քրիստոսի" սխալ գրչութիւն մ'ըլլալու է, որ իմաստին ալ յարմար չէ. պէտք է ուղղել կոչականի:

Է. [17] Ամբողջ այս մասն "Ընթերցմունք", մինչեւ Սարկաւագի Քարոզութիւնն "Յամենայն անձնէ" եւն, բաւական տարբեր է յունարէնին մէջ: Daniel այսպէս ունի խրատագրերս (նոյնպէս Goar եւն), զորոնք պէտք է համեմատել վերը գրուած հայերէնին հետ. "Դպտն. Լոյս զուարթ, եւն: Սրկ. Պրոսխոմէն: Քհ. Խաղաղութիւն ա-

երկնաւոր Աստուած հայրցն մերոց՝ աղաչեմք զքեզ՝ լուր մեզ եւ ողորմեա։ — Որ ոչ խորհիս զմահ մեղաւորին, այլ զդառնալ նորա ի չար ճանապարհէն եւ զկեալն՝ աղաչեմք զքեզ լուր մեզ եւ ողո։ — [Ժող.] Տէր ողո։ — [Սարկ.] Որ առատ ես յողորմել՝ աղաչեմք զքեզ։ — Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում աղաչեմք։ — Ժող. Թ. Տէր ող.։ — [Սարկ.] [19]Վասն բարեպաշտ եւ աստուածահաճոյ թագաւորին մերոյ եւ ամենայն պաղատին եւ զինուորեալ մանկանց նորա զՏէր աղաչեսցուք։ — Վասն արքեպիսկոպոսին մերոյ եւ պատուական քահանայութեան եւ որ ի Քրիստոս սարկաւագութեան զՏէր։

## ԱՂԱՒԹՔ ԲԱԶԿԱՏԱՐԱԾ

Ը. — Քահն. ասէ զաղաւթս. Տէր աստուած մեր զտարածմամբ ձեռաց աղաւթս[20] ընկալ ի ծառայից քոց եւ ողորմեաց մեզ ըստ բազում ողորմութեան քում. զգթութիւն քո առաքեա ի վերայ մեր եւ յամենայն ժողովուրդ քո, որ կան առաջի երեսաց քո, եւ ակն ունին առ ի քէն մեծի ողորմութեան քում։ — Ի ձայն. — Զի ողորմած եւ մարդասէր ես Աստուած. եւ քեզ վայելեն փառք, իշխանութիւն եւ պատիւ։

---

Ը. ‖[126] L "Վայել է փառք„ եւն։

մանեցուն։ Սրբ. իմաստութիւն (փխ. "իմաստութեանք„ կամ "սոփիայ„։) Ընթերցօղն (ընթեռնու) չյաաալօպրիօլն. եւ գննանդօ (ընթերց. Ծննդոց, Է. 6—10.) եւ փրիմօրր յաաալօպրիօլն եւ յետ այնորէն ձօրօղն Սրբ. Աղաչեցէք։ Եւ ժհ. ասեւ աշխ յետոյ ըմօօրօսօ եօ շմրօէ (λαμπάδα ըստ Goarի, Dan. ունի μενουάλιον,) ելցեալ առաջի օրհօյ օեղանոյն եօ փեօանօէրեաւ (խոնարհեալ) ասէ. իմաստութեանք ուրթի։ Լոյս Քրիստոսի երեւեցի ամենեցուն։ Եւ անօէանօն ըմթեանօ զըմթերցօօղն (յԱռակաց, Թ. 13—18.) Եւ յետ յօօօրեկլոյն ասէ ժհ. խաղաղութիւն քեզ։ Սրբ. Սոփիա։ Սօղմօօօղն ճԹուզիզ եզեցեն (τὸ κατευθυνθήτω.) Եւ զԹէ Ուղիղեղեցոյն ասէ Սրբ. Ասասցուք ամենեքեան յամենայն անձնէ եւ յամենայն մտաց մերոց ասասցուք՝ Տէր ամենակալ„ եւն։

[18] Կարծենք լաւ կ՚ըլլար եթէ հոս ջնջէինք այս "Տէր ողորմեա„, վասն զի խաղաղականիս այս տան կարգը կը խանգարէ հոս, թէեւ հայոյն ունեցած ձեւով այլուր ալ տեսնեք նոյնը։ — "Երկնաւոր„ չունի Յոյնը, նոյնպէս ամբողջ "Որ ոչ խորհիս„ եւն եւ "Որ առատ ես„ անները։ Այս կարգի համառօտմունք սովորական են պատարագամատուցի ընդօրինակողներուն։

[19] Կարծենք լաւ է հայերէնին հոս կցելը խաղաղականացս այս երկու անները։ Յունարէնն (առ Dan.) հոս կը դնէ նախ բօզլօօօրօծ օղօրեն (տես յաջորդը) անկէ ետքը յիշեալ երկու անները, կցելով խաղաղականաց ուրիշ աներ ալ՝ յղ. եղբարց, յղ. շինողաց եկեղեցւոյ, յղ. պտղաբերից, եւն. ասոնցմէ ետքն է միայն որ քահանայն կը կցէ Բազկատարածի փառաբանութիւնը "Զի ողորմած եւ մարդասէր Աստուած գոլով„ եւն Տես նոյնպէս Ոսկեբերանինը՝ վերն էջ 364։ — Բայց Goar այս ամէնն հայոյն համեմատ ունի։

Ը. [20] "Զօօրօծմօմ յեօօց օղօիօ„ կամ ինչպէս Բարսղի եւ Ոսկեբերանի թարգմանիչը գրած է "զբազկատարած զաղաչանս.„ (տես վերն էջ 189 եւ 364։) Յունարէնն է՝ τὴν ἐκτενῆ ταύτην ἱκεσίαν, զոր ճիշդ խօսելով՝ թարգմանելու ենք՝ "շօնիօնլ (շարունակ, յարատեւ, երկարաձգեալ) օղօչօնօ.„ Goar կը թարգմանէ (էջ 194) protensam hanc supplicationem, ուստի վերը խորագիրն ալ՝ "Աղօթք օնիօնլ օղօչօնօյ„։ Մենք հոս եւ այլուր պահեցինք հնոց "բազկատարածն„ (յունարէն բառն՝ բազկի մասին գործածուելով՝ անոր տարածելն ալ կը նշանակէ։) — "Եւ քեզ վայելէ փառք„ եւն վերջաբանութեան մասին տես Դան. 10։

### ԱՂԱՒԹՔ ԵՐԱԽԱՅԻՑ

Խ. — *Սարկ.* Աղաւթեցէք երեխայք: — [*Ժող.*] Տէր ող: — [*Սարկ.*] Հաւատացեալքդ վասն երեխայից զՏէր:[21] — Ուսուսցէ նոցա զբանն ճշմարիտ: Յայտնեսցէ նոցա զաւետարանն արդարութեան եւ փրկութեան, զՏէր: — *Ժող.* Տէր ող: — [*Սարկ.*] Միաւորեսցէ զնոսա ընդ սրբուհւոյ իւրում կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյ: — Ընկալ, կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ: — Որք երեխայք էք զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք: — *Ժող.* Քեզ տէր:

### ԱՂԱՒԹՔ ԵՐԱԽԱՅԻՑ

*Աղաւթք երեխայից.*[22] Աստուած Աստուած մեր, որ արարիչդ ես եւ նորոգիչ ամենայնի, որ կամելով կամիս զփրկութիւն ամենեցուն եւ ի գիտութիւն ճշմարտութեան հասանել. նայեաց ի ծառայքս քո յերեխայսս. եւ ազատեա զնոսա ի հնութեանն պատրանաց եւ ի նենգութենէ հալածչին. եւ կոչեա զնոսա ի կեանս յաւիտենականս՝ լուսաւորեալ զանձինս նոցա եւ զմարմինս. եւ թուեա զնոսա ընդ ընտրեալ հաւտս քո, յորոց վերայ կոչեցեալ է անուն քո սուրբ: — *Ի ձայն.* Զի եւ սոքա ընդ մեզ փառաւորեսցեն զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին, այժմ եւ միշտ:

*Սարկն.* Որք երախայք է+ երթայք. որք ոչ էք լուսաւորեալ՝ երթայք: Աղաւթեցէք վասն ոչ լուսաւորելոցն:[23] Հաւատացեալք վասն եղբարց մերոց, որք պատրաստեալ են՝ սուրբ լուսաւորութեանն եւ փրկութեան նոցա, զՏէր [աղաչեսցուք]: — *Ժող.* Տէր ող: — [*Սարկ.*] Զի տէր Աստուած մեր հաստատեսցէ զնոսա եւ զաւրացուսցէ՝ զՏէր աղաչեսցուք: Լուսաւորեսցէ զնոսա լուսով գիտութեան: Արժանի արասցէ զնոսա ժամանակի ուղղութեան, սրբեալ զհնացեալ մարդն եւ գտանել թողութիւն մեղաց եւ զգենուլ զա-

---

Թ. ||131 L "միաւորեսցէ զնա" (փխ. "զնոսա:") ||132 L ալ հոս "կեցո:" ||144 L ունի բուն՝ "Որք երախայք՝ երթայք." ուստի չունի "է+." բայն, որուն

Թ. 21 Ալ պակսի հոս "Զի ողորմեսցի նոցա Տէր" տունը:

22 Հոս կը սկսի գործածել B, որ նախընթացները կարճ խորագրով միայն կ'ակնարկէ: — "Արարիչդ ես եւ նորոգիչ" յունականին մէջ է՝ "արարիչ եւ ստեղծիչ" (δημιουργός.) — "Կամելով կամիս" [illegible] անյարմար ոճականութիւնն հոս հիմ չունի յունարէնէն: — "Ի նենգութենէ հալածչին" նոյնպէս չէ յունականին համեմատ, որ կ'ըսէ "թշնամւոյն" կամ հակառակող բանսարկուին: Յատուկ է հայոյն նոյնպէս "ընդ ընտրեալ հօտս քո:" Յոյնը՝ "ընդ բանաւոր հօտի քում" (τῇ λογικῇ σου ποίμνῃ.) Փառաբանութեան մէջն ալ կ'ըսէ Յ. "...փառաւորեսցեն զամենապատիւ եւ զմեծվայելուչ անուն քո, Հօր եւ Որդւոյ" եւն:

23 Քանի մը բառով յանգուցեր է հոս հայը, ուր յունարէնն կրկին ձեւ կը դնէ: Մինչեւ Պահոց Դ. շաբթուն երեքշաբթին կը պատուիրէ ըսել՝ "Որք երախայք էք, երթայք. (երեք անգամ.) մի՛ ոք յերախայից: Հաւատացեալք, եւ եւս խաղաղութեամբ զՏէր աղաչեսցուք:" Միայն Միջինքէն ետքը կը պատուիրէ ըսել այսպէս՝ "Որք երախայք էք, երթայք. (կրկին անգամ.) որք ոչ էք լուսաւորեալ՝ երթայք: Որք ոչ էք լուսաւորեալ՝ աղօթեցէք. զՏէր աղաչեսցուք: Հաւատացեալք" եւն: Ըստ այսմ հայերէնն այս երկրորդ ձեւը միայն ունի:

նապականութիւն զՏէր աղ։ — Ժող. Տէր ող։ — [Սարկ.] Օ՛հ ծնանիցէ զնոսա ջրով եւ հոգւով. շնորհեսցէ նոցա զկատարումն հաւատոյ. զի թուեսցէ զնոսա ընդ սուրբ եւ ընտրեալ հաւատս իւր, զՏէր աղ։ — Ընկալ, կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ Աստուած քոյին շնորհիւ։

ԱՂԱՒԹՔ ԼՈՒՍԱՒՈՐԵԼԵԱՑ

Ժ. — [Սարկ.] Որք ի լուսաւորութիւն պատրաստեալ էք՝ զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք։

*Աղաւթք, որ ասի երեխայիցն, ի Դշքի. միջոցն ի վեր մինչեւ ցմեծի ուրբաթն. եւ ոչ միայն ի Դշքի. եւ յուրբաթ, այլ եւ ի շաբաթսն, բայց ի Ղազարոյ շաբաթէն. վասն զի լիցի անդ լուսաւորութիւն. եւ յամենայն կիւրակէին եւ ի նմին կիրակի ուտոցն։*[24]

*Աղաւթք լուս.* Երեւեցո զերեսս քո, Տէր, նոցա որք ի լուսաւորութիւն պատրաստեալ կան եւ անձկացեալ են թաւթափել ի շաղախմանէ մեղաց. պայծառացո զմիտս նոցա. հաստատեա զնոսա ի հաւատս. եւ անշարժ պահեա զնոսա ի յոյս, կատարեա զնոսա ի սէր. եւ անդամս պատուականս Քրիստոսի քո ցոյց զնոսա, որ ետ զանձն իւր փոխանակ-սրբութեանց յաղագս անձանց մերոց։ — *Ի ձայն.* — Օ՛հ դու ես լուսաւորիչ[25] մեր. եւ քեզ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ։

*Սարկն.* Որք ի լուսաւորութիւն էք՝ երթայք. *(երկիցս):* Որք երեխայք էք երթայք։ Մի՛ ոք յերեխայից. մի՛ ոք ի թերահաւատից. եւ մի՛ ոք յապաշխարողաց եւ յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս։ Որք հաւատացեալքդ էք, եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ — Ժող. Տէր ողորմեա։

ԱՂԱՒԹՔ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ ԱՌԱՋԻՆ

ԺԱ. — *Քահն.* Տէր Աստուած մեր[26] եւ օրհնեալ. որ զկենարարին Քրիստոսի քո զմահն յապականութենէ մեզ յանապականութեան արարեր.[27] եւ

---

համար գիտել կու տայ Վ. Հ. Ցովհաննէս՝ "Պակասէր այս բան յօրինակին. յետոյ յաւելեալ է։" ‖152 L "զկատարումն հաւատոյ" (փխ. "զկատարումն։")
Ժ. ‖160 L "եւ յամ կիրակին։"

Ժ. [24] Երկար խորագրիս տեղ կ'ըսէ Ցոյնը՝ "Աղօթք ի վերայ պատրաստելոց ի լուսաւորութիւն, զոր ասէ քհ. ի ծածուկ։" — "Թօթափել ի շաղախմանէ մեղաց." Ցոյնը՝ "Թօթափել (ընկենուլ) զաղտ մեղաց" (τὸν τῆς ἁμαρτίας μολυσμὸν ἀποτινάξασθαι.) — "Անդամս ... ցոյց զնոսա" պարինքն "արա" (բառական բառ յունին ἀνάδειξον, ինչպէս բաւական յաճախ հնոց քով։) Իսկ "փոխանակ-սրբութեանց" մեկ բառ համարելու է, բայց միշտ անճահ է. յունարէնն է՝ ἀντίλυτρον, պարինքն՝ փրկանք, ուստի "ետ զանձն իւր փրկանս վասն անձանց մերոց." Անյարմար եւ նոյն իսկ սխալ թարգմանութեան պատճառն է յայտնապէս այն որ թարգմանիչը λύτρον (փրկանք) բառը λουτρὸν (լուացում, բաղնիք, սրբուիլ) կարդացեր է։

[25] "Լուսաւորիչ" բառ B եւ Dan. որ ունին φωτισμὸς (լուսաւորութիւն.) Goar "սրբութիւն" կ'ըսէ։

ԺԱ. [26] Արդէն "Աստուած մեր եւ օրհնեալ" ասութիւնը կաղ է. յունարէնը կ'ուզէ

զամենեսեան ի չարութենէ պղծոյն մահացեալ ազատեցեր. եւ զմիտս մոլորեալ ի բարութիւն հաստատեցեր. եւ զաչս մեր արգելեր յամենայն չար հայեցուածոց. եւ զունկն մեր ամրացուցեր յամենայն դատարկ բանից եւ զլեզու մեր սրբեցեր՝ խաւսել զբանս վայելուչս: Սրբեա եւ այժմ Տէր, զշրթունս մեր յաւրհնել զքեզ. եւ զձեռս մեր՝ որ շարժէր ի գործս մեղաց[28] զաւրացո գործել զամենայն հաճոյս քո. եւ զամենայն զգայարանս մեր եւ զմիտս կնքեա շնորհիւ քով Տէր: — Սարկն. Ընկալ, կեցո: — Զամենասրբուհին զան..: — [Քահ.] վերածայնէ. Զի քեզ վայելէ ամենայն փառք, պատիւ եւ իշխանութիւն այժմ եւ միշտ եւ յաւ.:

## ԱՂԱՒԹՔ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ ԵՐԿՐՈՐԴ

[Քահ.] Տէր սուրբ եւ բարերար, հայցեմք ի քէն զմեծ զողորմութիւն քո արա ի մեղաւորքս եւ յանարժանիքս. եւ արա զմեզ արժանի ընդունող լինել միածնի Որդւոյ քո եւ Աստուծոյ մերոյ Թագաւորիդ փառաց: Ահա ամբիծ մարմին նորա եւ կենդանարար արիւն նորա ի հասեալ ժամս յայս կայ ի վերայ խորհրդական սեղանոյս, որ է [պատսպարեալ] ի բազմութենէ զաւրաց երկնից անտեսանելի՝ պարգեւքս այս.[29] եւ արդ աղաչեմք զքեզ Տէր, զմերձեցեալս ի սմա անդա[պար]տս պահեա. զմտաց աչս սովաւ պայծառացո՝ լինել որդիս լուսոյ եւ որդիս տունջեան:

Սարկն. Ընկալ կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ Տէր քոյին շնորհիւդ: — [Ժող.] Կեցո: — [Սարկ.][30] Զամենասրբուհին զանարատն, զառաւել

ԺԱ. ‖[176] Լ նախ "յապականութիւն արարեր.„ յետոյ ուղղուած՝ "յանապականութիւն:„ ‖[183] Լ "շնորհիւ քո:„ ‖[193] Լ "անդարտս պահեա.„ որ կրնայ ուղիղ ալ ըլլալ, բայց նաեւ կրճատումն "անդապարտս„ բառին:

"Աստուած ձի եւ օրհնեալ:„ Ընդհանրապէս անյաջող է բովանդակ աղօթքին թարգմանութիւնը:

27 Բոլորովին անյաջող փոխադրութիւն է "զմահ„ հայցականով: Ըլլալու է "Որ կենդանարար մահուամբ Քրիստոսի քո յապականութենէ զմեզ յանապականութիւն փոխեցեր.„ ինչպէս կը պահանջէ խօսքին իմաստն եւ յունարէնն: Նոյնպէս եւ յաջորդներն ըստ յունին ըլլալու են՝ "Դու զամենայն զգայարանս մեր ի մահուանէ՝ ընդ որով գրաւեալ են (τῆς ἐμπαθοῦς νεκρώσεως) ազատեա, առաջնորդ նոցա բարի զմիտս հաստատեալ. եւ զաչս մեր արգել յամենայն չար հայեցուածոյ, զունկն սուրբ ի դատարկ բանից, զլեզու մեր սրբեա յանպատշաճ խօսից: Սրբեա եւ այժմ„ եւն:

28 Յոյն՝ "Զձեռս մեր արա, ի չար գործոց ի բաց կալ, բայց գործել միայն զհաճոյս քո„ (այսինքն՝ "զամենայն որ հաճոյ են քեզ:„) — Վերածայնելէն ետքը Յ. կը յաւելու Սարկաւագին քարոզութիւնն "Եւ եւս խաղաղութեամբ զՏէր աղաչեսցուք:„ Ասկէ ետքն է Հաւատացելոց Բ աղօթքը:

29 "Պատսպարեալ„ կամ նման բառ մ'աւելցնելու է յամենայն դէպս, որ հայերէնին անիմաստ խօսքը յունարէնին միտքը բացատրէ: "Անտեսանելի„ պէտք չէ կապել "պարգեւք„ բառին իբր ածական, հապա մակբայօրէն առնուլ իբր "անտեսապէս:„ Յունարէնն է՝ ἀπὸ πλήθους στρατιᾶς οὐρανίου ἀοράτως δορυφορούμενα ("պատսպարեալ անտեսապէս ի բազմութենէ զօրաց երկնից:„) Դժուարութիւն պատճառած է հոս ալ նաեւ այլուր անյաջող թարգմանուած δορυφορέω բայը. տես վերն էջ 193 եւ այլուր:

30 "Զամենասրբուհի„ եւն բացայայտ կերպով չի նշանակեր հոս յունարէնը:

*փառաւորեալ տիրուհին մեր զաստուածածինն եւ զմիշտ կոյսն Մարիամ: — [Ժող.] Յիշեա Տէր եւ ողորմեա:*

## ԱՂԱՒԹՔ ՄԵԾ ՄՏԻՑ

ԺԲ. — *Քահ. ասէ զաղաւթս.*[31] *Որ այց արարեր մեզ ողորմութեամբ եւ գթութեամբ, Տէր Տէր, եւ շնորհեցեր համարձակութիւն մեզ նուաստ եւ անարժան ծառայից քոց մերձ կալ սրբոյ քո սեղանոյս, եւ մատուցանել քեզ զբանաւոր զայս եւ զանարիւն պաշտաւնս յաղագս մեղաց մերոց. նայեաց յանպիտան ծառայքս քո, եւ ջնջեա զամենայն յանցանս մեր վասն քոյին բարեգթութեանդ. եւ մաքրեա զշրթունս իմ եւ զսիրտս յամենայն պղծութենէ հոգւոյ եւ մարմնոյ. եւ բաւականացո զիս զաւրութեամբ սրբոյ Հոգւոյդ ի պաշտաւնս յայս. եւ ընկալ զիս վասն բարերարութեանդ քո, որ մերձեցեալս եմ ի սուրբ քո սեղանս. հաճեցիր Տէր ընդունելի լինել զմատուցեալ քեզ զընծայս զայսոսիկ*[32] *ի ձեռն մեր՝ զիջանելով ըստ մերում տկարութեանս. եւ մի ընկենուր զիս յերեսաց քոց, եւ մի գարշիր յիմ անարժանութենէս. այլ ողորմեաց ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում, եւ ի բաց արա յինէն զանաւրէնութիւնս իմ. որպէս զի անդատապարտ մատուցեալ առաջի փառաց քոց՝ արժանի եղէց այցելութեան միածնի քո Որդւոյդ. եւ մի որպէս ծառայ մեղաց անպիտան եղեցիմ: Այո՛ տէր ամենազաւր Աստուած, լուր աղաչանաց իմոց. քանզի դու ես որ ներգործես*[33] *զամենայն յամենայնի. եւ զայժմուս ամենեքեան խնդրեմք զաւգնականութիւն: — Սարկ. Սոփիայ: — [Քահ.] Վասն պարգեւաց Քրիստոսի քո ընդ որում աւրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ ամենասուրբ եւ բարերար եւ կենդանարար քո Հոգւովդ այժմ եւ միշտ եւ յաւ:*

*Եւ սկսանին եղանակել. եւ բերի պատարագն ի սեղանն սուրբ ահիւ եւ դողութեամբ.*[34] *Այժմ զաւրութիւնք երկնից ընդ մեզ աներեւոյթ պաշտեն.*

---

ԺԲ. ‖208 "Հաճեցիր" անսովոր ձեւը պահեցինք. կարելի է որ թարգմանչին գրչէն ելած ըլլայ: ‖217—18 L "հանդերձ... քո Հոգւոյդ:" ‖220 L

ԺԲ. [31] Ոչ B եւ ոչ Dan. ունին այս երկոյն աղօթքը "Աղօթք մեծ մտից." եւ ոչ Goar իւր բնագրին մէջ: Բայց գրած է նոյնը Goar ծանօթութեանց մէջ Crypto-Ferratensis կամ Grottaferrata կոչուած հին ձեռագրէն (Goar, p. 203), զոր ուրիշ տեղեր ալ յիշելու առիթ ունեցանք. (տես վերն էջ 345, Ծան. 1 եւ այլուր:) Հայերէնը բոլորովին նոյն է յիշեալ ձեռագրին ընթերցուածոց հետ:

[32] Յունարէն եւ ըստ այսմ անյաջող դարձուած է "հաճեցիր (այսպէս) Տէր ընդունելի լինել զմատուցեալ քեզ զընծայս" եւն, մինչ յունարէն ասութեան հետեւելով՝ (Grottaf.) εὐδόκησον Κύριε δέκτα γενέσθαι τὰ προσάγομενά σοι δῶρα ταῦτα եւն ("հաճեաց Տէր ընդունելի լինել մատուցեալ քեզ ընծայից" եւն, կամ "զի ընդունելի լիցին մատուցեալ քեզ ընծայքս" եւն:)

[33] "Որ ներգործես" ճշդիւ ըստ յունարէնին (Grottaf) ἐνεργῶν (ներգործող:) Յաջորդ խօսքին մէջ "զայժմուս" չունի Grottaf. ձեռագիրը: Այս խօսքով կը լմննայ աղօթքս, զոր միայն հայն եւ Grottaf. ունէին, բայց վերջինս ոչ ճիշդ նոյնտեղը, որովհետեւ "Այժմ զօրութիւնք" եւն տողէն ետքն ունի աղօթքս եւ ոչ անկէ յառաջ, ինչպէս է հոս հայերէնին մէջ:

[34] "Այժմ զօրութիւնք" եւն տողին մասին՝ որ 645ին մուծուած կ'ըսուի, տես վերն էջ 348—

*զի աՀա մտանէ Թագաւոր փառաց։ ԱՀա պատարագ խորՀրդաբար կատարեալ ընծայաբերի․ Հաւատով եւ փափագանաւք մատիցուք․ զի Հաղորդս կենաց յաւիտենականացն եղիցուք։*

*Քահն. աղաւթէ՝ յորժամ բերի պատարագն.*[35] **Փառք Քրիստոս** *ողորմութեան քում որ զժամանակս պաՀոցս յիշատակեալ շնորՀեցեր մեզ. արդ Հայցեմք ի քո անչափ գթութենէդ, տուր մեզ դարձ արժանապէս. զընդունայնս ատել, զճշմարտութիւնս սիրել, ի մեղաց որոշել, եւ զմարմինս սուրբ պաՀել, բղխել զուղղութիւն եւ ըստ արքայութեանդ երկնից պատրաստ եւ անխռով քաղաքավարութեամբ պայծառանալ. զի աւրՀնեալ է քո արարչութիւնդ, Քրիստոս Աստուած մեր. եւ քեզ փառք, իշխանութիւն եւ պատիւ։*

*Այլ աղաւթք. Տէր Աստուած մեր, առաքեա ինձ զաւրութիւն ի բարձանց, եւ զաւրացո զիս ի սպասաւորութիւնս քո յայս. որպէս զի անդատապարտ կացից առաջի սրբոյ քո սեղանոյս՝ մատուցանել զանարիւն զենումն քո. եւ քեզ փառս վերառաքեմ, Հաւր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյդ այժմ եւ միշտ։*

*Սարկաւագն.*[36] *Կատարելով զերեկոյի աղաւթս մեր Տեառն՝ զՏէր աղաչեսցուք։ — Ժողովուրդն, Տէր ողորմեա։ — [Սարկ.] Վասն յառաջադրութեան պատուական եւ սուրբ պարգեւացս՝ զՏէր։ — Զի մարդասէրն Աստուած մեր, որ ընկալաւ զսա ի սուրբ, յերկնային, եւ յիմանալի, ի Հոգեւոր յիւր մատուցարանն ի Հոտ անուշից՝ զՏէր։ — [Ժող.] Տէր ողորմեա։ — [Սարկ.] փոխանակ առաքեսցէ մեզ զշնորՀս պարգեւաց Հոգւոյն սրբոյ՝ զՏէր։ — [Ժող.] Տէր ող։ — [Սարկ.] Զերեկս (մերձս) մերձեալ եւ զառաջիկայ զգիշերս խաղաղութեամբ եւ առանց մեղաց կատարել Հաւատով՝ ի Տեառնէ խնդրեսցուք։ Ժողովուրդն. ՇնորՀեա՛ տէր։ Պառասխօ կիրիէ։ — Սարկ. ԶՀրեշտակ խաղաղութեան Հաւատարիմ պաՀապան անձանց մերոց՝ ի Տեառնէ։ — Զքաւութիւն եւ զԹողութիւն մեղաց՝ ի Տեառնէ։ — Զմնացեալ ժամանակս կենաց մերոց խաղաղութեամբ կատարել ի Տեառնէ։ — Քրիստոնէութեամբ կատարել*

---

անճառ՝ "այժմ զօրութիւնք երկնից ընդ մեզ աներեւոյթ պաշտեն․" (փխ. "պաշտեն։") ‖231 L "...զօրութիւն ի Բարձրոյ" փխ. "ի բարձանց։" ‖234 L "եւ քեզ փառ + վերառաքեմ" եւն։ ‖236 L "վասն առաջադրութեան" եւն։ ‖237 L կրկին անգամ գրուած ունի (գոնէ ըստ ընդօրինակութեան) "զի մարդասէրն" բառերը։ ‖241 Այսպէս L "զերեկս մերձս մերձեալ," ուր "մերձս" անշուշտ շփոթմամբ կրկնութիւն է։ ‖243 Յունական "պառասխօ կիրիէ" բա-

349, ուր յունարէնը նոր թարգմանութեամբ յառաջ բերած ենք։

[35] Թէ այս ("Փառք, Քրիստոս" եւն) եւ թէ կից երկրորդ ("Այլ աղօթք. Տէր Աստուած մեր" եւն) աղօթից գրուագները հոս Հայերէնին յատուկ են։ Չունին զանոնք ոչ B, ոչ Dan. եւ ոչ Goar, որոնք Մակից առաջէն ("Այժմ զօրութիւնք" եւն) անմիջապէս ետքը կը կցեն սարկաւագի քարոզութիւնն՝ "Կատարելով" եւն։

[36] Քարոզութիւնքս ալ աւելի ճոխ են Հայերէնին մէջ. Dan. եւ Goar երկու երեք տուն զնելով շատցած են։ Իսկ Բարբերինեանն չունի հոս Քարոզութիւն, ընդհակառակը կը պատուիրէ "Այժմ զօրութիւնք" առաջէն ետքը անմիջապէս կցել "Որ անճառ" եւն աղօթքը (Հմմ. ԺԳ։)

զկեանս մեր անվրդով եւ անամօթս եւ բարի պատասխանատուութեամբ կալ առաջի ահեղ բեմին Քրիստոսի ի Տեառնէ խնդրեսցուք։ — Զմիութիւնն հաւատոյ ժողովրդեանս եւ զհաղորդութիւն Հոգւոյ սրբոյ հաղորդելով։ — Ընկալ, կեցո։ — Զամենասրբուհին, զմն.։

## ԱՂԱՒԹՔ ՆԱԽ ՔԱՆ ԶՏԷՐՈՒՆԱԿԱՆՆ

ԺԳ. — Որ անճառ եւ անտեսանելի խորհուրդ ես, Աստուած մեր[37]։ Ի քեզ ամենայն գանձք իմաստութեան եւ գիտութեան ծածկեալ կան։ Դու զսպասաւորութիւն պատարագիս այսորիկ յայտնեցեր մեզ. եւ կարգեցեր զմեզ մեղաւորքս վասն բազում մարդասիրութեանդ քո առ. ի մատուցանել քեզ զընծայս[38] զայս վասն ամենեցուն մեղաց մերոց եւ ժողովրդեանս անգիտութեան։ Դու ինքնին Տէր, անտեսանելի Թագաւոր, որոյ մեծութիւնդ անյաղթելի է եւ փառաց քոց ոչ գոյ չափ,[39] ներեա[40] մեզ անարժան ծառայից քոց, որ կամք առաջի խորհրդոյ սուրբ ընծայիցս. որք ընդ քերովբէս կամք առաջի փառաց աթոռոյ քո. յորում միածին որդի քո եւ Աստուած մեր բազմեալ կայ սոսկալի խորհրդով. զմեզ զամենեսեան զհաւատացեալ ժողովուրդս քո ազատեսցես յանմաքրութենէ. սրբեա զամենեցուն անձինս եւ զմարմինս գերագոյն[41] սրբութեամբ քո. զի մաքրեալ տեսութեամբ եւ անամօթ երեսաւք, լուսաւորեալ սրտիւ, զաստուածայինս զայս առցուք սրբութիւն. եւ սովաւ կենդանասցուք եւ յաւդեալ լիցուք ընդ սոյն ինքն Քրիստոսի[42] քո Աստուածդ մեր, որ ասաց՝ Որ ուտէ զմարմին իմ եւ ըմպէ զարիւն իմ, յիս բնակեսցէ եւ ես ի նմա։ Զի եւ մեք բնակեսցուք ի սմա[43] եւ լիցուք տաճար ամենասուրբ եւ երկրպագելի Հոգւոյդ քո՝ ազատեալք յամենայն դիւական ներգործութեանց.[44] որպէս զի նորոգեալ

ցագանչութեան դիմաց լուսանցքի վրայ գրուած է (ի Թ. 1145) յունարէնն՝ *Παρασχῶ Κύριε.* ‖247–48 "կեալ առաջի ահեղ բեմին" եւն։
ԺԳ. ‖254 L "պատարագիս այսմիկ" եւն։ ‖264–65 L բուն՝ "յօդեալ լիցուք ընդ սոյն ինքն քո." յետոյ աւելցուած է (ի Թ. 1145) "ընդ... Քրիստոսի քո։"

ԺԳ. 37 Յյնը՝ "Որ Աստուածդ ես անճառ եւ անտեսանելի խորհրդոց" եւն։

38 Յյնը՝ "զընծայս եւ զպատարագս" (δῶρα τε καὶ θυσίας.)

39 Յյնը՝ "...Թագաւոր, որ ստնես մեծամեծս եւ անքննինս, փառաւորեալս եւ զարմանալիս, որոց ոչ գոյ չափ։" Այսպէս նաեւ B, բայց հայերէնին ընթերցումն ալ գէշ չէ։

40 Փխ. "Ներեա մեզ" եւն Յյնը՝ "Նայեա ի մեզ յանարժան ծառայս" եւն։

41 "Գերագոյն սրբութեամբ" կրնայ լաւ ըլլալ. բայց Յյնն ունի՝ ἁγιασμῷ ἀναφαιρέτῳ (անբառնալի, հաստատուն սրբութեամբ։) Յաջորդ "մաքուր տեսութեամբ" գրուած է մաքուր "գիտակցութեամբ" կամ "խղճի մտօք" իմաստով. (Յյնը՝ ἐν καθαρῷ συνειδότι,) որուն ուրիշ պատարագներու մէջ ալ շատ անգամ հանդիպեցանք։

42 "Քրիստոսի" բառն անհրաժեշտ է. Յյնն ալ՝ "միաւորեսցուք ընդ նմին իսկ Քրիստոսի, Աստուծոյ մերում ճշմարտի" եւն։

43 Յյնը՝ "Զի բնակելով (Քրիստոսի) ի մեզ եւ պատելով ի ներքս զմեզ Բանին քո, Տէր, եղիցուք տաճար" եւն։

44 Աս եւ ասկէ սկսեալ մինչեւ աղօթից վերջը կամ "վերաձայնելը" տարբեր է Յ, որ ունի՝ "ազատեալք յամենայն դիւական ներգործութենէ, որ (ներ)գործի ի գործս կամ բանս կամ ի միտս. եւ հասցուք խոստացելոց մեզ բարեացն ընդ ամենայն սուրբս քո, որք ի սկզբանէ հաճոյ եղեն քեզ։" Հոս կը նշանակուին Սարկաւագի քարոզու-

կացցուք ի բարիոք պատուիրանս քո ընդ ամենայն սուրբս քո, որք յայսմ աշխարհէ առ քեզ փոխեցան։ — Քահանայն վերածայնէ. Եւ արժանաւորեա զմեզ Տէր համարձակութեամբ անդատապարտս իշխել կարդալ զքեզ երկնաւորդ Աստուած Հայր եւ ասել.

Ժողովուրդն զձեռս համբարձեալ[45] ասեն. Հայր մեր որ յերկինսդ ես, սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. զի քո է արքայութիւն եւ զաւրութիւն եւ փառք յաւ.։

ԱՂԱԻԹՔ ԽՈՆԱՐՀՄԱՆ

ԺԴ. — [Քահ.] Խաղաղութիւն ընդ ամենեսեան։ — Սարկաւագն[46]. Աստուծոյ երկրպագեսցուք։ — Ժողովուրդն. Առաջի քո Տէր։

Քահանայն խոնարհի եւ աղաւթէ. Տէր Աստուած բարերար եւ գթած միայն՝ որ ի բարձունս բնակեալդ ես, եւ զխոնարհս տեսանես. նայեա գթութեամբ աչաց քոց ի ժողովուրդս յայս, եւ պահեա զսոսա. եւ արժանի արա զամենեսեան զմեզ անդատապարտս ընդունել զկենդանարար խորհուրդս զայս. քանզի քեզ խոնարհեցուցաք զգլուխ մեր՝ ակնկալեալ առ ի քէն մեծի քո ողորմութեանդ։ — Ի ձայն. — Շնորհաւք եւ գթութեամբ եւ մարդասիրութեամբ միածնի Որդւոյ քում, ընդ որում աւրհնեալ ես հանդերձ ամենասուրբ բարերար եւ կենդանարար քո Հոգւովդ այժմ եւ միշտ եւ յաւ.։

ԱՂԱԻԹՔ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ

ԺԵ. [Քահ.[47]] Նայեա Տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից ի սրբութենէ քումմէ եւ յաթոռոյ փառաց թագաւորութեանդ քո. եկ ի սրբել եւ ի կեցուցանել զմեզ. որ ի վեր ընդ Հաւր նստիս եւ աստ անտեսանելի իմանիս.[48] արժանի արա հզաւր ձեռամբ քո տալ մեզ յանարատ մարմնոյ քո եւ ի պատուական արենէ եւ ի ձեռս մեր ամենայն ժողովրդեանն։

Այլ աղաւթք ծածուկ[49]. Անհասանելի Բանդ ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյն համագոյական, անսկզբնակից եւ մշտնջենակից. առ ընկալ եւ զմեր աւր-

---

թիւնքս՝ «Սրկ. Ընկալ, կեցո։ Զօրս զայս։ Զհրեշտակ խաղաղութեան։ Զքաւութիւն եւ զթողութիւն։ Զբարիս եւ զօգտակարս։ Զմնացուած կենաց մերոց։ Քրիստոնէութեամբ զվախճան կենաց։ Զմիութիւն հաւատոյ։» Ասկէ ետքը կու գայ «վերամբարձ» փառաբանութիւնն՝ «Եւ արժանաւորեա» եւն։ Սակայն B յայսմ համաձայն է հայերէնին որ հոս քարոզութիւն չունի։

45 «Զձեռս համբարձեալ» չունին յոյն օրինակները։ Grottaf. քահանային բանալ կու տայ «Հայր մերն,» որ հայերէնին մէջ կրճատ է։

ԺԴ. 46 «Աստուծոյ երկրպագեսցուք» եւ «Առաջի քո Տէր» սովորական բանաձեւներու տեղ հոս ունին յոյն օրինակները՝ «Սրկ. Զգլուխս ձեր Տեառն խոնարհեցուցէք։»

ԺԵ. 47 Յոյնը աս խորագիրն ունի՝ «ՔՀ. խոնարհեալ աղօթէ ի ծածուկ։» Աղօթքը տես Ոսկեբերանի պատարագին մէջ, վերն՝ էջ 879։

48 Այս թարգմանութեան յատուկ է «անտեսանելի էմանիս.» Ոսկեբերանի քով՝ «ղարա-րաքէ..» (տես էջ 879, ծան. 112։) Յոյնը՝ συνών («ընդ Հր ես աստից անտեսանելոյ։») B ուղղակի չէ գրած հոս աղօթքս, բայց կը յիշէ բարձրացումը։ — Յատուկ է աւելցած նոյնպէս «հզօր ձեռամբ.» (նոյնպէս Յ. κραταιᾷ σου χειρί.)

49 Այս աղօթքը չունին ոչ B եւ ոչ Dan.

հնութիւնս որպէս աչաւոր եւ անարիւն զոհ, որպէս զսերովբէից եւ զքերովբէից զերեքսրբեան եւ զանլռելի երգս եւ զիմ մեղաւորիս գոչելով եւ ասելով։

Սարկաւագն բարձր. Պռաւսխումեն։ — Քահանայն զհացն բարձր ունելով. Զնախասրբեալ սրբութիւնս՝ սրբոց[50]։ — Ժողովուրդն. Միայն սուրբ. միայն Տէր. միայն Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հաւր. ամէն։

## ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ ԵՒ ԳՈՀՈՒԹԻՒՆ

Ծ.Զ. — Ու բեկանէ զհացն ըստ աւրինի. եւ հաղորդի ի սուրբ խորհրդոյն. եւ զժողովուրդն հաղորդէ:

Զկնի աղաւթք. Գոհանամք զքէն փրկիչ ամենեցուն Աստուած, որ շնորհեցեր[51] մեզ ամենեցուն զբարութիւնս զայս հաղորդել ի սուրբ մարմին եւ յարիւն Քրիստոսի քո. աղաչեմք զքեզ Տէր մարդասէր, պահեա զմեզ ընդ հովանեաւ թեւոց քոց. եւ տուր մեզ մինչեւ ցկատարումն աւուրց եւ վախճան կենաց մերոց արժանապէս ընդունել զսրբութիւն քո՝ ի լուսաւորութիւն հոգւոց եւ մարմնոց, ի ժառանգութիւն երկնից արքայութեանդ։

[52]Սարկաւագն տանի զսուրբ խորհուրդն յառաջադրութեան սեղանն: — Քահանայն. Աւրհնեալ է Աստուած մեր որ լուսաւորէ եւ սրբէ զամենայն մարդ՝ այժմ եւ միշտ։

[53]Գոհանամք զքէն Քրիստոս Աստուած մեր, զի արժանի արարեր զմեզ հաղորդել ի յանարատ մարմնոյ եւ ի պատուական արենէ տնաւրէնութեանդ քո, ալէլուիա։

Սարկաւագն. Ընկալ, կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ Տէր քոյին շնորհիւդ։ — Զերեկս մերձեալ եւ զառաջիկայ գիշերս խաղաղութեամբ եւ առանց մեղաց կատարեալ ի Տեառնէ խնդրեսցուք։

[Քահ.] ի ձայն. Զի դու ես Աստուած մեր եւ քեզ փառս վերառաքեմք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ։ Խաղաղութեամբ եկեսցուք։ — Ժողո-

---

ԺԵ. ‖[294–95] L "ընկալ եւ զմեզ օրհնութիւնս" (փխ. "զմեր։")

եւ Goar, որ սոյն տեղ Բարձրացման արարողութեան մասին խրատագիր մը կը դնեն հոս։

[50] Յոյնը նոյնպէս՝ τὰ προηγιασμένα ἅγια τοῖς ἁγίοις.

ԺԶ. [51] Յոյնը՝ "Գոհանամք... վասն բարեաց զոր մեզ շնորհեցեր եւ վասն հաղորդելոյ ի սուրբ մարմինն" եւն։

[52] Խրատագիրս չկայ յունին մէջ, որ սոյն տեղ նախ կը դնէ նախընթաց աղօթքին կցորդ փառաբանութիւնն՝ "ի ձայն բարձր. Զի դու ես սրբութիւն մեր, եւ քեզ փառս վերառաքեմք, Հօր եւ Որդւոյ" եւն։ Ասկէ ետքը՝ "Սրկ. Ընկալ, կեցո, ողորմեա եւ պահեա զմեզ։ Զօրս ամենայն կատարեալ, սուրբ, խաղաղութեամբ։ Քհ. Խաղաղութեամբ երթիցուք։ Սրկ. ԶՏէր աղաչեսցուք։" Ասկէ ետքն անմիջապէս կու գայ "Յետակոյս խորանի" աղօթքն. (Հմմ. ԺԷ.) ըստ այսմ շատ համառօտ քան հայերէնը։

[53] Ըստ նախընթացին յունականք չունին այս "Գոհանամք զքէն" եւն։ Նաեւ Brightman (p. 351—52) չի նշանակեր նոյնը Բարբերինեանին համար. սակայն Goar նշանակած է նոյնը, ուստի B ունի այս տունն ալ հայոյն հետ. (տես Goar, p. 203) Նոյնպէս միայն B ունի յաջորդաց մէջ ժողովրդեան "Յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի" ըսելը. միւսներն՝ սոյն տեղը միայն "Զտէր աղաչեսցուք։"

*վուրղն.* Յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ — [*Սարկ.*] Օ. Տէր աղաչեսցուք։ — *Ժողովուրդն.* Տէր ողորմեա։ Կիրիէ էլէյսոն[54]։

### ԱՂԱԻԹՔ ՅԵՏԿՈՅՍ ԽՈՐԱՆԻՆ

ԺԷ. — *Քահանայն.* Տէր Տէր Աստուած ամենակալ, որ զամենայն տիեզերս իմաստութեամբ արարեր, եւ բազում բարերարութեամբդ[55] քո ժողովեցեր զմեզ յանարատ եւ ի պարկեշտ աւուրքս յայսոսիկ, ի սրբութիւն հոգւոց եւ մարմնոց, ի ժուժկալութիւն մշտաց եւ ախտից, ի յոյս յարութեան։ Որ ի քառասներորդ աւուրս գծագրեցեր զտախտակս քարեղէնս աստուածեղէն ձեռաւք տուեալ ծառային Մովսէսի՝ շնորհեա եւ մեզ Տէր բարերար Քրիստոս ի վաստակս բարեաց փութալ,[56] զընթացս պահոցս կատարել, եւ զհաւատս անշարժ պահել, եւ զգլուխս աներեւոյթ վիշապին փշրել, եւ յաղթող մեղաց երեւել, եւ անդատապարտս հասանել յերկրպագութիւն սուրբ յարութեան քո. զի աւրհնեալ եւ փառաւորեալ է ամենասուրբ քո անունդ Հաւր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյդ այժմ եւ միշտ։

Եղիցի անուն տեառն աւրհնեալ։ Գ *անգամ*։

### ԱՂԱԻԹՔ ՅԱԻԱՆԴԱՏԱՆՆ

ԺԸ. — *Աղաւթք յանաւթապահն ասէ*[*Քահանայն*]. Տէր աստուած մեր որ ժողովեցեր զմեզ ի պարկեշտ յաւուրս յայս եւ հաղորդս արարեր սոսկալի խորհրդոյս. աղաչեմք զքեզ Տէր, խառնեա զմեզ ընդ ընտրեալ հաւտդ քո. եւ ցոյց զմեզ ժառանգաւորս արքայութեանդ քո. զի քո է արքայութիւն եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ։

[57] *Ու քաշէ ժողովրդեանն նշխար, եւ ասէ զարձակման աղաւթքն, եւ արձակէ զժողովուրդն:*

---

ԺԷ. ‖321 “Կիրիէ էլէյսոն„ բառերուն դիմացն լուսանցքի վրայ գրուած է (ի Թ. 1145) յունականն՝ Κύριε ἐλέησον. ‖326 “Ի յոյս յարութեան։„

ԺԸ. ‖339 L “վայել է։„ ‖342 Վերջը կայ գրչէն յիշատակարանիկս՝ “Ողորմեա Քրիստոս՝ Աստուած գրողի սորա մեղաւորի։„

[54] Յունականք հոս եւ ոչ կը նշանակեն ընդհանրապէս “Տէր ողորմեա„ ըսել, ուր հայն մինչեւ անգամ յունարէնն “Կիրիէ էլէյսոն„ (Κύριε ἐλέησον) գրած է հայերէնին հետ կից, չենք գիտեր ինչու։

[55] Յոյնը՝ “անճառ իմաստութեամբ քով եւ բազում բարերարութեամբ„ ունի։ Անճահ է “ժողովեցեր զմեզ յանարատ եւ ի պարկեշտ յաւուրքս յայսոսիկ.„ յունարէնն է՝ ἀγαγὼν ἡμᾶς εἰς τὰς πανσέπτους ἡμέρας ταύτας (“ածեր հասուցեր զմեզ ի յարգելի աւուրս յայսոսիկ։„) “Ժողովել„ չի յարմարիր, բայց կրկնուած է նաեւ “յանօթապահն„ աղօթքին սկիզբը. (Հմծ. ԺԸ։)

[56] “Ի վաստակս բարեաց փութալ„ խօսքին տեղ կ'ըսէ յոյնը՝ τὸν ἀγῶνα τὸν καλὸν ἀγωνίσασθαι (“զբարւոք մրցումն մրցել։„)

ԺԸ. [57] Հոս ունի Յոյնը խորագիր մ'ըսելու ԼԴ եւ ՃԽԵ սաղմոսներն կամ “Եղիցի անուն տեառն օրհնեալ„ եւ “Բարձր արարից զքեզ Աստուած իմ եւ Թագաւոր իմ„ ևն։ — Աւելորդ է ըսել որ հոս եւ այլուր խորագիրներն շատ անգամ տարբերութիւն կը ցուցընեն հայերէնէն. անոնք՝ ըստ որում երկրորդական՝ ամէն անգամ նշանակած չենք։ — “Անօթապահ„ փխ. Աւանդատուն լաւ յօրինուած բառ է. (Հմմտ. վերն՝ էջ 159, 216, 383 Ծան. 143 ևն։)

## 4.

*Յակոբայ Պատարագ:*

---

### Ա.

### ԱԶԴՈՒՄՆ

*Ասորական ծիսէն տեսանք վերը Թարգմանուած Իգնատիոսի Աստուածազգեցի անուամբ նուիրագործութիւն մը: Յաջորդով կը հրատարակենք երկրորդ ասորական պատարագ մ'ալ՝ Յակոբայ անուամբ: Ասորւոց չափազանց բազմաթիւ (իբր 70) պատարագներէն միայն այս երկուքը հասած են մեզի նախնեաց Թարգմանութեամբ: Միւսներէն կարելի է որ ըլլան մէկ երկու հատն ալ Թարգմանուած, բայց մեզի բոլորովին անծանօթ կը մնան, եւ ոչ ալ մեր նախնեաց քով ուրիշներու մասին յիշատակութեան կամ ակնարկութեան հանդիպած ենք ցայսօր:*

*Յակոբայ առաքելոյ անունը պատարագամատուցի հետ կապուած կը գտնենք արդէն հնագոյն ժամանակներէն: "Առաքելոց Սահմանադրութեան„ Ը գրքին պատարագի բուն նուիրագործութեան մասը "Կարգաւորութիւն Յակոբայ եղբօր Յովհաննու Ոսկեբերանի„ տիտղոսը կը կրէ: Ասոր Թարգմանութիւնը վերը տեսանք.[1] եւ այս տեղւոյ մեր խնդրին հետ ալ ուղղակի կապ չունենալով՝ յիշելով միայն կը շատանանք: Հնուց ծանօթ է բուն Յակոբայ Տեառնեղբօր անուամբ Պատարագ մ'երկու բաւական տարբեր խմբագրութեամբ՝ յունարէն եւ ասորերէն լեզուաւ, հրատարակուած բազմաթիւ անգամ եւ աւելի յաճախ հետազօտութեանց ու վիճաբանութեանց առարկայ եղած, որուն մասին նաեւ այսօր շատ դիտնոց կարծիքներն իրարմէ կը տարբերին: Այս պատարագին ուրիշ համառօտ խմբագրութիւն մ'ալ կայ ասորերէն. երկրորդ նոյնպէս համառօտեալ խմբագրութեան մը ներկայացուցիչ կը գտնենք այժմ Հայերէնն ալ, զոր յաջորդով կը հրատարակենք միակ ձեռագրի մը համեմատ: Աւելորդ չենք համարիր մէկ երկու խօսք ըսել այս բնագիրներուն մասին:*

*Յունարէն Պատարագն Յակոբայ Տեառնեղբօր հրատարակուած է բազմաթիւ անգամ, այն ամէն տեղերն ու հեղինակներէն՝ զորոնք յիշեցինք բիւզանդեան Պատարագաց վրայ խօսած ատեննիս:[2] Այսպէս առաջին հրատարակութիւնն ըրած է ասոր՝ Բարսղի եւ Ոսկեբերանի պատարագաց հետ՝ Դեմետրիոս Դուկաս 1526ին ի Հռոմ. նոյնպէս ի հրատարակութեան Մորէլի եւ այլոց:[3] Հրատարակուած է ի միջի այլոց յաճախ յիշուած գործոց մէջ Փաբրիկիոսի,*

---

[1] Տես վերն էջ 33—43 եւ կից տեղեկութիւնքն:

[2] Տես վերն՝ էջ 343—46:

[3] Հմմտ. *Λειτουργίαι τῶν ἁγίων πατέρων Ἰακώβου τοῦ ἀποστόλου καὶ ἀδελφοθέου, Βασιλείου τοῦ μεγάλου* etc. Parisiis 1560 epud Guil. Morelium. նոյնը տպ. ի գիրս Fronto Ducaeus, Biblioth. vet. patr. Փարիզ 1624, Հատ. Բ. Թարգմանեալ *ἡ θεῖα λειτουργία τοῦ ἁγίου Ἰακώβου* եւն, Վենետիկ 1645. յունարէն-լատիներէն առ de la Bigne, Bibl. Patrum, Փարիզ 1576, Հատ. Դ, եւ բազմաթիւ ուրիշ տեղեր:

Ասեմանեայ, Ատալպերդ Դանիէլի, Սուէնսընի, այժմ Պրայթմանի եւ բազմաթիւ ուրիշներու:[1] Թարգմանուած է նոյնն ի հարկէ շատ անգամ լատիներէն, անգլիերէն, գերմաներէն եւն:[2] Ձեռագիրք ալ ցանցառ չեն ի Հռոմ, Փարիզ, Օքսֆորդ, նաեւ Գահիրէ, Սինայ եւն:[3] Քննութեանց եւ վիճաբանութեանց առիթ եղած ըլլալով ի սկզբանէ ի վեր՝ ասոր մասին գրուած ամէն գրութիւնք անհնար է յիշել այստեղ:[4]

Ասորերէն կայ նոյն պատարագն, ինչպէս ըսինք, երկու խմբագրութեամբ: Ընդարձակը կամ բուն Պատարագն ասորի բոլոր հասարակութիւններէն կը գործածուի շատ աննշան տարբերութեամբ: Յակոբիկներու համար ասորի բնագիր հրատարակուած չերեւար. բայց նոյնը հրատարակուած է Հռոմէական Ասորւոց համար Բարսղի, Յովհաննու Ոսկեբերանի, Քսեստոսի եւն պատարագաց հետ ի Հռոմ՝ 1843ին, ուր խորագիրք քարշունի (արաբերէն ասորական տառերով) են, նոյնպէս "ի ձայն բարձր„ ըսելու մասերն ասորերէն եւ քարշունի դիմացէ դիմաց:[5] Նոյն պատարագը կայ նաեւ Մարոնիտներու համար տպագրուած Խորհրդատետրին մէջ ի Հռոմ 1592 եւ 1816,[6] նոյնպէս Ասեմանեայ յիշեալ գրքին մէջ.[7] լատիներէն թարգմանութիւն կայ Ռընոտոյի յաճախ յիշուած գործքին Բ հատորին սկիզբն, որմէ առած է նաեւ Փաբրիկիոս. թարգմանած են նաեւ ուրիշները:[8] Այս բնագիրն է զոր յաջորդ համեմատութեանց մէջ JA

---

[1] Հմմտ. J. A. Fabricius, Codex apocr. Novi Test. Համպուրկ 1719, Գ, էջ 33 եւն, հանդերձ լատ. թարգմանութեամբ. նոյնպէս J. A. Assemani, Codex liturgicus ecclesiae universae, Հռոմ 1752, Հտր. Դ, 2, էջ 1—67, Ե, 68—99. միայն յունարէն A. Daniel, Codex liturgicus, Լայփցիկ 1853, Հտր. Դ. 88—133 համեմատութեամբք, ներածութիւն՝ անդ 80—87. C. A. Swainson, The Greek Liturgies եւն, Քէմպրիճ 1884, էջ 214—332 համեմատութեամբ չորս ձեռագրաց. նոյն բնագիրն՝ բայց տարբեր խորագիրներով՝ Դիոնեսիոս Լատաս (Latas) եպ. Զանթեայ (անդ, 1886:) Առնցմէ զատ հրատարակեցին նաեւ W. Trollope, The greek liturgy of S. James եւն, Էտինպուրկ 1848. J. M. Neale, Tetralogia liturgica, Լոնտոն 1849, The liturgy of S. James, Լոնտոն 1858. F. E. Brightman, Liturgies eastern and western, Օքսֆորդ 1896, p. 31—68 եւ ուրիշներ:

[2] Լատ. թարգմանութիւնն հրատարակեց Մորէլլ յոյն բնագրին հրատարակութեան առթին՝ Փարիզ 1560, նոյնը ապ. Անտուերպէն 1560 եւ 1562, եւ յետոյ շատ յաճախ գրեթէ Ս. Հարց գրութեանց ամէն հաւաքմանց մէջ, այսպէս ի Biblioth. Patrum Փարիզ 1575, Հտր. Դ. Փարիզ 1589 Հտր. Զ. ի Magna bibl. vet. patr. Քէօլն 1618, Հտր. Ա եւն եւն: Յիշեցինք Փաբրիկիոսի եւ Ասեմանեայ գործքերը. դարձեալ՝ F. Brett, A collection of the principal liturgies, Լոնտ. 1720. Neale, History of the holy eastern church եւն, Լոնտ. 1850, Ներածութիւն՝ էջ 531—701. Neale and Littledale, the liturgies of SS. Mark, James եւն, Լոնտ. 1859 եւ 1868: Գերմաներէն՝ Augusti, Denkwürdigkeiten. VIII, 427—59. Probst, Liturgie der drei ersten christlichen Jahrhunderte, Թիւպինկէն 1870, էջ 295—318 (իսկ Liturgie des vierten Jahrhundertes եւն, Միւնստէր 1893, գրութեան մէջ չէ առած պատարագս. թէեւ յաճախ վրան խօսած:) Կը թողում յիշել ուրիշներն եւ այլեւայլ լեզուներն:

[3] Տես Brightman, Liturgies, p. XLIX—LII.

[4] Լիակատար մատենախօսական մանրամասնութիւնք տես ի գիրս Brightman, էջ ԽԸ—ԿԳ "ասորի ծիսի„ մասին խօսելով. անկէ կը քաղենք շատ բան:

[5] Տես Missale syriacum iuxta ritum ecclesiae Antiochenae Syrorum, Հռոմ 1843, էջ 108—17. Հմմտ. Միաբանեալ Ասորւոց համար Կարգ Դպրութեան, ապ. Պէյրութ 1880:

[6] Missale Chaldaicum iuxta ritum ecclesiae nationis Maronitarum, Հռոմ 1592, 1716, 1816 եւն. նոյնպէս "Գիրք Պատարագի„ ապ. ի Խոզայեա 1816, 1838, 1855, Պէյրութ 1888: "Կարգ դպրութեան„ ապ. Հռոմ 1596, 1715, եւն եւն:

[7] Assemani, Codex liturgicus, Հտր. Դ, 131—179. Կարգ դպրութեան մը՝ անդ, Դ, 180—226:

[8] Renaudot, Lit. Or. coll. ed. Francofurti 1847 (Բ Տպ.). II, 29—42 „Liturgia S. Jacobi apostoli fratris Domini". այս գրքիս առաջին

որ անոր պէս աս ալ համառօտեալ բնագրի մը ներկայացուցիչն է, բայց այսու հանդերձ յաճախ կը միաբանի JA կամ ընդարձակ խմբագրութեան հետ։ Յիշատակները (Համ. Թ եւ Ժ) բոլորովին յատուկ խմբագրութիւն մըն են՝ հաւասարապէս շեղելով երկու աօրինակներէն ալ։ Ըստ այսմ հայերէնն աօրինակին երրորդ խմբագրութիւն մըն է։ Աւելի մանրամասնութիւնք տես ծանօթութեանց մէջ։

Թարգմանչին անձին վրայ ի հարկէ որոշ տեղեկութիւն մը չունինք, եւ ոչ թարգմանութեան ճիշդ թուականին վրայ։ Լիոնեան օրինակը 1314ին գրուած ըլլալով՝ այս թուականէն յառաջ է յամենայն դէպս։ Մոնաքոնեան 1289ին օրինակին մէջ ալ չգտնուիլը կրնայ ենթադրել տալ որ այս թուականէն քիչ յառաջ ըլլալու է փոխադրութիւնն, որով նոյն հաւաքման գրչին տակաւին անծանօթ մնացած։ Այս ամէնը նկատելով կը ստիպուինք ասոր ալ այն թուականը տալ, զոր տուինք Իգնատիոսի պատարագի թարգմանութեան։ Թերեւս ալ թէ Իգնատիոսի եւ թէ Յակոբայ այս նուիրագործութիւնք մէկ թարգմանչի գործն են.[1] կարծիք՝ զոր առ այժմ իբրեւ պարզ ենթադրութիւն միայն կրնանք յառաջ բերել։ Անշուշտ Հայոց քով աւելի կանուխ ալ կը յիշուի Յակոբայ պատարագը, թէեւ չընդունիր անոր վաւերականութիւնը.[2] սակայն այսպիսի կոչմանց եւ յիշատակութեանց մէջ՝ որոնք բաժակի խնդրոյ առթիւ կ'ըլլան, խնդրական կը մնայ ընդհանրապէս թէ մեր այս հայերէն պատարագն ըլլայ յիշուածը. ընդհակառակը հաւանական է որ Ս. Յակոբայ պատարագն ընդհանրապէս՝ (յունարէնը գլխաւորաբար) յառաջ բերուած է այն տեղերը։[3]

---

[1] Համմ. վերն էջ 387։

[2] Տես այսպէս վերն՝ էջ 176 եւ ծան. 3։

[3] Այսպէս օրինակի համար Թէոդորիանոս Բ. բանակցութեան մէջ եղած յիշատակութիւնն. (տես Հ. Աղէքս. եպ. Պալճեան, Պատմ. կթղ. Վրդ. ի Հայս, Վիեննա 1878, էջ 248—49), ուր Շնորհալի շատ յարմար կերպով կը պատասխանէ՝ "Ուստի՞ յայտ իցէ եթէ Պատարագամատոյցս այս Եղբօր Տեառն Յակոբայ իցէ։ Ի վախճանի առաքելական կանոնաց գրեալ խոկ է ցուցակ գրոց եկեղեցւոյ. այլ յիշատակ պատարագամատուցին այնորիկ անդ ոչ գտանի, բայց թուղթ մի միայն Ս. Յակոբայ։" Սոյն 1307ի եւ 1316ի ժողովոց Հարք Թէոդորիանոս բերած ամէն կոչմունք բաժակի եւ այլ խնդրոց մասին կ'երկրորդեն իրենց Սահմանագրութեան մէջ, բայց Յակոբայ պատարագի կոչումն զանց ըրած են։ Քիչ անգամ կը հանդիպինք այսպիսի քննադատական տեսութեանց մեր նախնեաց քով։

## Բ.

## ԲՆԱԳԻՐ ՅԱԿՈԲԱՅ ՊԱՏԱՐԱԳԻՆ

*ՊԱՏԱՐԱԳ ՍՐԲՈՅՆ ՅԱԿՈԲԱՅ ԵՂԲԱՒՐ ՏԵԱՌՆ ԱՍԱՑԵԱԼ՝*[1]

### ԱՂԱՒԹՔ ՅԱՌԱՋԱԴՐՈՒԹԵԱՆ

Ա. — [2]*Նախ քան զժամամուտն զգենու քահանայն եւ սարկաւագն եւ դպիրն. եւ առեալ քահանայն զբուրուառն խնկէ: Եւ ապա սարկաւագն քարոզէ բարձր ի ձիւ.* Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք: — Ժող. Տէր ողորմեա: — *Սրկ.* Առաջի աստուածային խորհրդոյս այսորիկ, որ հանդերձեալ է կատարել ի ձեռն պատուական եւ սրբազան քահանայիս՝ զՏէր աղաչեսցուք: — Վասն սուրբ եւ պատուական ընծայիցս Տեառն Աստուծոյ՝ զՏէր աղ.: — Վասն որոյ եւ մեք ամենեքեան միաբան կացցուք յաղաւթս առաջի Տեառն Աստուծոյ մերոյ, եւ խնդրեսցուք ի նմանէ զի ուղղեսցէ զգործս ձեռաց մերոց՝ զՏէր աղ.: — Եւ եւս միաբ.: — Զանձինս: Ողորմեաց:

Բնագրիս հրատարակութեան համար միայն Լիոնի օրինակն ունէինք՝ ըստ ընդօրինակութեան Վ. Հ. Յովսէփեայ Գաթրճեան (տես վերն՝ էջ 83, § 9:) Ուստի նոյնն առած ենք հիմն բնագրիս. ուր ուղղել պէտք եղաւ՝ դրինք հոս ձեռագրին ընթերցումը Լ համառօտութեամբ: Ուղղագրութեան համար կ'արժէ հոս ալ ըսել ինչ որ նախընթացներուն համար ըսինք, ուստի — են: Խորագիրը (Աղօթք յառաջադրութեան են) եւ Ա, Բ, Գ են բաժանմունք մերմէ են:

ՀՐՏՐ.

Խորագիր: Լ “...եղբօրն Տեառն„ են:

Ա. ‖ 5 Լ “զբուրվառն:„ ‖ 7 Լ “առաջի աստուածային խորհրդոյս այսմիկ:„

[1] Խորագրիս մասին տես քիչ մը վեր Տեղեկութեանց մէջ: — Յաջորդ համեմատութեանց մէջ միայն կարեւոր կէտերը նշանակելու փոյթ տարած ենք, գլխաւորաբար համեմատելով հայերէնը առ բնագրին հետ՝ Liturgia minor Sancti Jacobi առ Renaudot, Lit. Or. coll. (Ֆրանքֆուրդ 1847), II, 126—132, զոր JB համառօտութեամբ կը նշանակենք: Ուր ընդարձակ “Պարգ. Յակոբայ„ նուիրագործութիւնն ալ համեմատել պէտք եղաւ (Liturgia S. Jacobi apostoli fratris Domini, առ Renaudot, II, 29—44), կը նշանակենք JA համառօտութեամբ: Աւելորդ է ըսելով JB (եւս առաւել JA եւ անոր ասորին SR) ուղղակի հայերէնին բնագիրը չէ, այլ հայերէնն եւ JB միեւնոյն բնագրին երկու խմբագրութիւններն են:) Դարձեալ միայն Renaudotի լատին թարգմանութիւնէն զատ ունինք առջեւնիս համեմատելու համար ընդարձակին կամ JAի ասորի բնագիրն, որ լոյս տեսած է Միացեալ Ասորւոց համար ի գիրս՝ Missale Syriacum juxta ritum Ecclesiae Antiochenae Syrorum. Romae 1843, 1°, pp. 103—127: Ասիկայ՝ ուր պէտք ըլլայ յիշել՝ SR համառօտութեամբ կը նշանակենք: Անծանօթ գործը չունէինք ձեռքերնիս:

Ա. [2] Սկզբան մասերս հայոյն յատուկ են եւ չկան ոչ ի JB եւ ոչ JA, նաեւ ասորի պատարագաց “սովորական կարգին„ եւ Նախերգանաց մէջ (Renaudot, II, 1—28) չենք գտներ ճիշդ նոյն բառերով. նման կամ համապատասխան մասեր ի հարկէ կան: Ընդհանրապէս Համ. Ա—Բ քաղուածք կ'երեւան՝ իբրեւ Պատարագի Պատրաստողական կամ Ընդհանուր մասն:

Քահ. զընծայսն ծածկէ եւ խնկէ եւ ասէ զաղ.։[3] Գոհութիւն եւ փառաբանութիւն մատուցանեմք քեզ հովուապետ բարի Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ զսուրբ մարմին քո ետուր կերակուր բանաւորի հաւտի քո, եւ պատուական արեամբ քո զպաքեալ ժողովուրդ քո արբուցեր։ Քեզ երկիր պագանեն ամենայն թագաւորք, եւ քեզ փառաբանութիւն մատուցանեն արժանապէս. եւ խոստովան լիցին քեզ ամենայն լեզուք։ Զի քեզ վայելէ գոհութիւն եւ խոստովանութիւն յամենայն լեզուէ եւ յամենայն անձնէ. փառք եւ պատիւ եւ երկրպագութիւն ընդ Հաւր եւ ամենասուրբ Հոգւոյդ, այժմ եւ։

Խաղաղութիւն ընդ ամենեսեան։

Քրիստոս Աստուած մեր, որ բարի ես բնութեամբ եւ տաս զսրբութիւն եւ զմաքրութիւն սրբոց քոց ամենայն երկիւղածաց, որ զսուրբ մարմին քո եւ զարիւն ետուր աշակերտաց քոց սուրբ առաքելոցն երկոտասանից ի սուրբ վերնատունն. եւ հրամայեցեր նոցա եւ ասացեր թէ՝ Այսպէս եւ դուք արասջիք ի յիշատակ իմ։ Եւ այժմ մարդասէր Տէր, արժանի արա զմեզ խրախանալ ի հոգեւոր կոչմանս՝ յոր կոչեցեր, մանաւանդ զիս զանարժանս՝ ի քահանայագործութիւն սուրբ մարմնոյ եւ արեան քո. զի մերձենալով ի սա՝ լցայց ցնծութեամբ եւ ուրախութեամբ, եւ աւրհնեցից զքեզ եւ զՀայր քո եւ զՀոգի քո սուրբ, այժմ եւ։

ԱՂԱԻԹՔ ԸՆԾԱՅԻՑ

Բ. — [4] Ի ծածուկ ասէ քահանայն յընծայսն: Սա է զենումն աստուածային, որ պարգեւեցաւ մեզ ի փրկութիւն։ Սա է զենումն աստուածային, յոր մերձենալով ի սա մաքրեցաք ի սեւացեալ մեղաց մերոց։ Սա է զենումն

‖26 L "ի սուրբ վերնատունն։" ‖28 L "ի հոգեւոր կոչմանս՝ զոր կոչեցեր։"

[3] Այս երկու աղօթքներուն նման կտորներ տես առ Renaudot, II, 13—4. բայց նոյն չեն, ուստի չենք կրնար համեմատել։

Բ. [4] Այս "Աղօթք" բառը յատկապէս աղօթք չէ, եւ չկայ ոչ ի JB եւ ոչ JA. Յայտնապէս որեւէ քարոզէ կամ ճառէ քաղուած կտոր մըն է՝ որ շատ անկապ կերպով մուծուած է պատարագին մէջ իբր աղօթք։ Ասորական գոյնը շատ որոշ է, ուստի չի կրնար կասկածուիլ որ Հայէ մը ներմուծուած ըլլայ։ Ասորի բնագրին մէջ ալ տարահովապէս կայ։ Ասով՝ եթէ արդէն պէտք ըլլար ապացուցի՝ կրնար հաստատուիլ նաեւ թէ այս ճառի մասերն՝ որ չկան ասորի պատարագաց արդի օրինակներուն մէջ, արդեամբք թարգմանուած են եւ ոչ թէ հայէ մը կցկցուած։ Բայց թէ թարգմանչին գրչէն ինչ կերպարանք որ ելած էր՝ նոյնպէս է ճշդիւ արդի օրինակն, չենք կրնար ի հարկէ ամէն կէտի համար երաշխաւորել։ Աչքի կը զարնեն մանաւանդ յարաբերականի անճիշդ գործածութիւնքն, որ կրնան դիւրաւ ծագիլ՝ ոչ այնչափ վարժ թարգմանչի մը համար՝ ասորի յարաբերական-մասնիկէն անհոլով ըլլալէն։ Ասորականի հետեւութիւն է այսպէս՝ "Յոր մերձենալով է ...," "Յոր կատարեալքն ճաշակելով է սմանէ," "Սա է զենումն աստուածային, զոր ամենայն հարք ... զսմանէ ճաշակեցին," եւն։ Ոմանք բոլորովին անհեթեթ են, այսպէս՝ "Սա է զենումն ... զոր հեթանոսք՝ ծնանելով ի ջուր աւազանին եւ է սմանէ ճաշակելով՝ քաւեցին" եւ նմաններ։ — Ընդհանրապէս բնագիրս շատ ուղղագրելի եւ անքերական մասեր ունի, որոնց չուզեցինք փոփոխութիւն մ'ընել. վասն զի թերեւս ուղղակի թարգմանչէն են։

աստուածային, յոր կատարեալքն առաքինութեամբ ճաշակելով ի սմանէ՝ համբառնան ի բարձունս երկնից: Սա է զենումն աստուածային որ առանց արեան մատուցաւ փոխանակ կենաց աշխարհի: Սա է զենումն աստուածային զոր նախագուշակեաց պատարագ մանկանն Աբելի: Սա զենումն աստուածային եւ նոր ուխտ փրկութեան, որ տուաւ մեզ հաւատացելոցս ի ժառանգութիւն յաւիտենական: Սա է զենումն աստուածային, որ տուաւ մեզ զէն փրկութեան հոգւոյ եւ մարմնոյ: Սա է զենումն աստուածային, որ զմեղս ամենեցուն ճշմարիտ խոստովանողացն քաւեսցէ եւ սրբեսցէ: Սա է զենումն աստուածային, զոր աստուածահայր մարգարէն Դաւիթ յառաջագոյն ասաց՝ Ճաշակեցէք եւ տեսէք, զի քաղցր է Տէր: Սա է զենումն աստուածային զոր ամենայն հարքն եւ մարգարէքն առաջինք զմանէ գուշակեցին: Սա է զենումն աստուածային, որ Եսայեայ մարգարէին տուաւ հրեղէն ունելեաւք ի տաճարին: Սա է զենումն աստուածային, զոր Մելքիսեդեկ քահանայն նուիրէր՝ զհացն եւ զգինին: Սա է զենումն աստուածային, որ մարգարէին Մովսեսի ծանուցաւ ի գառն եւ ի բաղարջն հանեալ ի սեղանն պղնձի: Սա է զենումն աստուածային, որով հեթանոսք՝ ծնանելով ի ջուր աւազանին եւ ի սմանէ ճաշակելով՝ քաւեսցին: Սա է զենումն աստուածային, զոր Հոգի սուրբ հաւասարն Հաւր եւ Որդւոյ հանգչի եւ սրբէ: Սա է զենումն աստուածային, զոր կատարեաց Հայրն երկնային եւ կնքեաց Որդին սիրելի եւ սրբեաց Հոգին սուրբ ճշմարիտ: Սմա յիշատակեմք եւ սմա փառս մատուցանեմք, եւ խունկ արկանեմք առաջի քո Տէր. զի լուասցես զաղտեղութիւնս մեր ողորմութեամբ քո եւ քաւեսցես զմեղս մեր եւ ջնջեսցես զամենայն սխալանս մեր զկամայ եւ զակամայ. եւ արժանի արասցես զմեզ եւ զննջեցեալսն մեր մեծի փառաց քոց ընդ Հաւր քո եւ Հոգւոյն սրբոյ, այժմ:

Քահանայն դառնայ ի ժողովուրդն. Խաղաղութիւն ընդ ձեզ: — Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում: — Եւ դարձեալ խնկէ քահանայն եւ ասէ.[5] Սուրբ Հայր սուրբ. Սուրբ Որդի սուրբ. Սուրբ Հոգի սուրբ: — Եւ ապա Սրկ. ասէ. Սոֆիա: — Ժող. Հաւատամք ի մի Աստուած, Հայրն ամենակալ, յարարողն երկնի եւ երկրի. ի լման:

---

Բ. ‖[38] L "Սայ է" եւն: ‖[47] L "զոր Եսայեայ մարգարէին տուաւ" եւն: ‖[51] L "Սա է... զոր հեթանոսք՝ ծնանելով ի ջուր... քաւեսցին:" ‖[69] L "քհ. ասէ զաղօթքս:"

Գ. [5] Այս մասերը քաղուած են միայն ասորական Պատարագի "ուղղափառն կարգէն" կամ Ընդհանուր մասէն (ordo communis.) Այսպէս "Սուրբ Հայր սուրբ" եւն սկիզբն է միայն խնկարկութեան առեն բուածին. (տես Renaudot, II, 20:) Նոյն սարկաւագին բոկբանքն է՝ «Սոֆիա եւ Պռոսխումէ: Ժող. Հաւատամք ի մի Աստուած: Քահանայն լռանայ կրոկ ... ... իւրոյ եւ այլն. Լուա Տէր զաղաղակութիւնս հոգւոյ իմոյ...: Խնդրէ զհաղորդութիւն եւ այլն. Օրհնեա Տէր թողութեան" եւն: Բայց չենք գտներ հոն ժողովրդեան պատասխանը՝ "Կատարեսցէ Տէր զխնդրուածս քո:"

Եւ քահանայն զգուշութեամբ լուանայ զծնօս իւր առաջի սրբոյ սեղանոյն, եւ խոստովանի զմեղս իւր, եւ դառնայ ի ժողովուրդն եւ առնու թողութիւն: Եւ ժողովուրդն ասեն. Տէր կատարեսցէ զխնդրուածս քո:

### ԱՂԱՒԹՔ ՆԱԽՔԱՆ ՋՈՂՋՈՅՆ

Գ. — [6] Եւ քահանայն ասէ զաղաւթս յառաջ քան զողջոյն տալն. Աստուած որ ես ամենայնի Տէր, զմեզ՝ որ ոչ էաք, արժանի արարեր բարեբար մարդասիրութեամբ քո. որպէս զի համբուրելով զմիմեանս ի համբոյրս աստուածային սիրութեան, սրբեսցուք յամենայն աղտեղութենէ հոգւոյ եւ մարմնոյ, եւ խառնեսցուք ի թիւ սրբոց քոց՝ շնորհաւք եւ գթութեամբ եւ մարդասիրութեամբ Միածնի Որդւոյ քո Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հայր եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք եւ պատիւ եւ երկրպագութիւն, այժմ եւ: — Ժող. Ամէն:

### ԱՂԱՒԹՔ ՈՂՋՈՒՆԻ

Գ. — Քհ. Խաղաղութիւն ընդ ձեզ: — Ժող. Եւ ընդ Հոգւոյդ քում: — Սրկ. Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան: — Ժող. Արժանի արա զմեզ Տէր Աստուած մեր: — Սրկ. Առաջի քո Տէր:[7]

Քահանայն ասէ զաղաւթս. Որ միայնդ ես Տէր ողորմած, առաքեա զաւրհնութիւն քո եւ զողորմութիւն ի վերայ սոցա՝ որ խոնարհեցուցին զպարանոցս իւրեանց առաջի սրբոյ սեղանոյ քո, որ բնակեալդ ես ի բարձունս եւ հայիս ի խոնարհ,[8] Աստուած Հայր. որ վասն անչափ մարդասիրութեան քո եւ անպատում գթութեանդ առաքեցեր զՄիածին Որդիդ քո յաշխարհ վասն մոլորեալ ոչխարիս դարձուցանելոյ: [9]Որ եկն եւ երարձ ի վերայ ուսոց կենարար խաչին, եւ մեռաւ վասն մեր, որ անպարտականն էր մահու: Եւ այժմ աղաչեմք

Գ. [6] Հոս կը սկսին թէ JB (Renaudot, II, 126) եւ թէ JA (անդ, II, 29) խորագրով Oratio ante Pacem. Նոյնպէս SR (էջ 103) նոյն խորագրով: Սակայն նոյն իսկ այս առաջին աղօթքը կը ցուցընէ որ հայերէնն ուղղակի եւ ոչ տառից մէկէն թարգմանուած է. այլ միայն որ թէ Հ. (հայերէնն) եւ թէ JB մէկ աղբիւր ունեցած են: Օրինակի համար JB այսպէս ունի աղօթքս՝ “Աստուած ամենայնի Տէր, շնորհեա մեզ անարժաներուս զփրկութիւնս զայս, զի առանց նենգութեան միացեալ զօդիւ սիրոյ, ողջունեսցուք զմիմեանս ի համբոյր սուրբ եւ աստուածային, եւ մատուցցուք քեզ փառս եւ գովութիւն, եւ Միածնի Որդւոյ քում եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ„ եւն: Ընդարձակն՝ JA եւ SR այսպէս է՝ “Տէր Աստուած մեր, չէ՝ թէպէտ անարժան եմք (կամ զանարժանքս,) ուրեմն արա այսմ փրկութեան, մարդասէր. զի սրբեալք յամենայն նենգութենէ եւ յամենայն ակնառութենէ երեսաց, ողջունեսցուք զմիմեանս ի համբոյր սուրբ եւ աստուածային, միացեալք զօդիւ սիրոյ եւ խաղաղութեան, Տերամբ մերով Աստուծով եւ փրկչաւ Յիսուսիւ Քրիստոսիւ„ եւն: Ըստ այսմ Հ. ոչ JA եւ ոչ JB եւ SR բնագրին հետ ճիշդ նոյն է:

Դ. [7] JB “Քհ. Խաղաղ.: Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում: Ողջոյն տուք:„ Այսչափ միայն. Նոյնպէս SR. իսկ JA տես Renaudot, II, 39:

[8] Աստարականք կը յաւելուն “Եւ օրհնեա զնոսա շնորհօք միածնի Որդւոյ քո եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ: Ժող. Ամէն. Քհ. Աստուած Հայր„ եւն: Ուստի երկու աղօթք է:

[9] “Որ եկն„ մինչեւ “մահու„ չունին ստարականք:

զքեզ, մի դարձուցաներ զերեսս քո ի մէնջ. այլ նայեա բարերար կամաւք քո ի պատարագս յայս, զոր մատուցանեմք յաւրինակ ճշմարիտ պատարագի Որդւոյ քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Զի ոչ եթէ յարդարութիւն մեր յուսալով՝ զոր ոչ գործեցաք, այլ յողորմութիւն քո ապաւինիմք, մարդասէր Տէր.[10] եւ խնդրեմք զքաւութիւն եւ զթողութիւն մեղաց մերոց եւ ամենայն ժողովրդեանս, միջնորդութեամբ միածնի Որդւոյ քո Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հաւր ամենակալի եւ Հոգւոյն սրբոյ փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ։

[11]*Սրկ.* Ահիւ կացցուք, երկեղիւ կացցուք, բարիոք կացցուք. եւ նայեցարուք զգուշութեամբ։ — *Դպ.* Առ քեզ Աստուած. — *Սրկ.* Պատարագ Քրիստոս մատչի՝ գառն Աստուծոյ։ — *Դպ.* Ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ աւրհնութեան։ — *ՔՀ. դառնայ ի ժողովուրդն կնքէ.* Սէրն Աստուծոյ Հաւր եւ Միածնի Որդւոյ նորա եւ սուրբ Հոգւոյն եղիցի ընդ ձեզ ամենեսեան ✝։ — *Դպ.* Ամէն, եւ ընդ հոգւոյդ քում։

*Սրկ.* Զդրունս, զդրունս, ամենայն զգուշութեամբ. ի վեր ընծայեցուցէք զզայարանս ձեր աստուածային երկեղիւ։ — *Դպ.* Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ։ — *Սրկ.* Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով [սրտիւ]։ — *Դպ.* Արժան եւ իրաւ։

## ՆԱԽԵՐԳԱՆ

Եւ. — *ՔՀ.* Ճշմարտապէս արժան եւ իրաւ է արժանապէս զքեզ փառաբանել, զքեզ աւրհնել, զքեզ գովել, քեզ երկիր պագանել, զքէն գոհանալ, արարիչ ամենայն արարածոց, երեւելեաց եւ աներեւութից.[12] որ

---

Դ. ‖[104] L կամ ընդօրինակութիւնք չունէր “սրտիւ,„ այլ կը լմնար “բոլորով„ ածականով, բայց ինքնին կը հասկցուի, ուստի դրինք փակագծի մէջ։

[10] Առկէ օկսեալ ունի JB “Մի ի զատապարտութիւն մեզ եկեսցէ խորհուրդս այս, որ ի փրկութիւն մեր հաստատեալ է. այլ ի քաւութիւն մեղաց մերոց եւ ի գոհութիւն մատուցանել քեզ եւ միածնի Որդւոյ քում եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ„ եւն։ Մնացեալ մասեր աղօթքիս ընդհանրապէս նոյն են տպագրեալ հետ, միայն թէ Հ. աւելի ճոխ է նոյնանշաններով եւն, զոր օրինակ “վասն անչափ մարդասիրութեան քո եւ անպատում գթութեան„ բառերուն տեղ ունի տարբեր՝ “վասն մեծի սիրոյ քո առ մարդիկ„ կամ “վասն մեծի մարդասիրութեան։„ Յատուկ է նոյնպէս “մի դարձուցաներ զերեսս քո ի մէնջ, այլ նայեա ... ի պատարագս ... յօրինակ ճշմարիտ պատարագի Որդւոյ քո„ եւն։ SR այսպէս ունի՝ “Մի դարձուցաներ զերեսս քո ի մէնջ, յորժամ մատուցանեմք պատարագս զոր հաւրեմ եւ զանարիւն.„

նոյնպէս JA. Իսկ JB ունի՝ Ne rejicias cultum hunc nostrum sacrificii hajus incruenti (“մի մերժեր զպաշտօնս մեր այսր անարեան պատարագի։„)

[11] Առկէ մինչեւ վերջն այսպէս կը համառօտէ JB՝ “Սրկ. Կացցուք բարւոք եւն։ Ժող. Ողորմութիւն եւն։ ՔՀ. Շնորհք եւն։ Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում։ ՔՀ. Ի վեր ընծայեցուցէք զմիտս եւն։ Ժող. Առ քեզ Աստուած։ ՔՀ. Եւ գոհացարուք։ Ժող. Արժան եւ իրաւ։„ Գրեթէ նոյնպէս JA, որ սակայն ունի հայոյն խորագիրը թէ “ՔՀ. դառնայ ի ժողովուրդն կնքէ„ (Sacerdos elevat velum et ter populum cruce signat. Իսկ SR չունի խորագիրս։) Երկուքն ալ չունին “Զդրունս, զդրունս„ որ թերեւս հայկական ուրիշ պատարագներէն մուծուած ըլլայ հոս։

Ե. [12] Այս տողերը ճշգիւ JA եւ SR բնագրաց համեմատ են, մինչ JB համառօտ է այս-

փառաբանիս յերկնաւորաց եւ յերկրաւորաց, ի հրեշտակաց եւ ի հրեշտակապետաց, յաթոռոց եւ ի տէրութեանց, ի պետութեանց եւ յիշխանութեանց եւ յամենայն երկնաւոր զաւրաց, ի սերովբէից եւ ի քերովբէից, որք անդադար ձայնիւ փառաբանութիւն մատուցանեն. — ի ձայն. — անհանգիստ աստուածաբանելով գոչեն, աղաղակեն եւ ասեն: — Դպ. Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զաւր.:

ԿԱՆՈՆ

Զ. — Ճշմարտապէս սուրբ ես թագաւոր թագաւորաց եւ պարգեւիչ ամենայն սրբութեանց:[13] Սուրբ ես դու, եւ միածին Որդին քո Տէր մեր Յիսուս Քրիստոս, եւ Հոգին քո սուրբ. որ անքննին [ես] յամենայնի, եւ անհաս է խորութիւն քո, Աստուած Հայր ամենակալ եւ յամենայնի կարող:[14] Որ ստեղծեր զմարդն ի հողոյ, եւ պարգեւեցեր նմա զդրախտին բնակութիւն. եւ ստունդանելով նմա պատուիրանաց քոց՝ անկաւ ի փառացն զոր ունէր. սակայն դու բարերար գոլով՝ ոչ անտես արարեր, այլ խրատեցեր հայրաբար, կոչեցեր աւրինաւք եւ մարգարէիւք, զկնի առաքեցեր զՈրդին քո միածին յաշխարհ, զի զպատկերակիցս քո վերստին նորոգեսցէ: Որ եկն եւ մարմնացաւ ի սրբուհւոյ կուսէն Մարիամայ Աստուածածնէն. շրջեցաւ ընդ մարդկան յաշխարհի, եւ կատարեաց զամենայն տնաւրէնութիւնս:

Նա յորժամ հանդերձեալ էր ընդունել զկամաւոր մահն իւր որ վասն մերոյ փրկութեան, ի գիշերին յայնմիկ էառ հաց յամենամաքուր սուրբ

---

Զ. ‖119 L «որ անքննին յամենայնի,» ուստի չունի նաեւ «ես» զոգն, որ

դէտ՝ «Ճշմարտապէս արժան եւ իրաւ է գոհութիւն մատուցանել քեզ արարչիդ ամենայն արարածոց, եւ երկիր պագանել եւ փառաւորել:» Առկէ ետքն եկածը («Որ փառաբանիս») կը պատուիրեն ատորականք ըսել «[illegible],» եւ այն՝ այսպիսի խմբագրութեամբ ըստ JBի. «Զոր գովեն զօրութիւնք երկնից, մարմնաւորք եւ անմարմինք, արեգակն եւ լուսին եւ ամենայն աստեղք, երկիր եւ ծովք, անդրանիկք գրեալք յերկնաւորն Երուսաղէմ, հրեշտակք, հրեշտակապետք, իշխանութիւնք, պետութիւնք, աթոռք, տէրութիւնք, զօրութիւնք, քերովբէք բազմաչեայք եւ սերովբէք վեցթեւեանք, ծածկելով զերեսս եւ զոտս թեւչին առ միմեանս, փառաբանեն (sanctificant), գոչեն եւ ասեն:» Քիչ տարբեր է SR եւ JA: — Հայոյն «անհանգիստ աստուածաբանելով գոչեն» եւն ըսածը լաւ է: Նոյնը տեսանք արդէն Բարողի քով ըստ Բարբերինեանին (տես վերն էջ 180, Ծան. 34:) Հոս տեղ նոյնպէս ունի նաեւ SR (էջ 105, տող 13), զոր Renaudot ալ կը թարգմանէ՝ theologia non conticescente եւն:

Զ. 13 Առաջին տողը մինչեւ SR եւ JA բնագրաց դէտ է. իսկ JB «Ճշմարտապէս սուրբ ես եւ սրբացուցիչ, թագաւոր աշխարհաց: Սուրբ եւ Որդի քո» եւն:

14 «Որ անքննինդ» եւն մինչեւ «յամենայնի կարող» չունի JB որ միայն կ՚ըսէ «(Հոգին սուրբ,) որ [illegible],» Աւելի նման են SR եւ JA գրելով՝ «Սուրբ եւ Հոգին քո, որ քննէ զամենայն, նաեւ զխորութիւնս քո. զի սուրբ ես որ զամենայն ունիս, ամենակարող, ահեղ, բարի» եւն: Առկէ ետքն մինչեւ վերջն նոյն ոճով կը համընթանայ հայերէնը JBի հետ, բայց նաեւ քանի մ՚աւելի մասերով, որոնց ամէնքն ալ կան ընդարձակին մէջ՝ ի SR եւ JA (տես Renaudot, II, 31.) «Նա յորժամ հանդերձեալ էր» եւն խօսքէն յառաջ կայ խորագիրս ի JB «[illegible],» իսկ JA «[illegible]:» — Մտադրութեան արժանի է «Եւ ցոյց քեզ, Հայր Աստուած,» խօսքը. որ չկայ ի JB. բայց կայ ի SR (p. 107.) ܘܚܪ ܠܟ ܐܠܗܐ ܐܒܐ ճիշդ հայերէնին դէտ, (Renaudot կը թարգմանէ levatis oculis in coelum, aspexit ad te Deus Pater)

*ձեռս իւր եւ եցոյց քեզ, Հայր Աստուած, գոհացաւ, աւրհնեաց, սրբեաց, եբեկ, եւ ետ առաքելոցն՝ որ ընդ նմա էին սուրբ աշակերտացն իւրոց, եւ ասաց.*

**Է.** — *Վերածայնէ. Առէք կերայք ի սմանէ ամենեքեան. սայ է մարմին իմ որ վասն ձեր եւ վասն բազմաց բեկաւ եւ տուաւ*[15] *ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց:*

*Ծած. Նոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեացն էառ, [խառնեաց] գինի*[16] *[եւ ջուր], եւ եցոյց քեզ, Հայր Աստուած, գոհացաւ, աւրհնեաց, սրբեաց եւ ետ աշակերտացն իւրոց եւ ասաց.*

*Բարձր. Առէք արբէք ամենեքեան ի սմանէ. այս է արիւն իմ նորոյ ուխտի, որ վասն ձեր եւ վասն բազմաց հեղու ի թողութիւն մեղաց:*[17] — *Դպ. Ամէն:* — *Քհ. Զայս արասջիք առ իմոյ յիշատակի, քանիցս անգամ ուտիցէք զհացս զայս եւ զբաժակս ըմպիցէք՝ զմահ իմ պատմեցէք եւ զգալուստն*[18] *իմ խոստովանեսջիք:*

*Ժողովուրդն ասէ. Զմահ քո, Տէր, յիշատակեմք, եւ զյարութիւն քո խոստովանիմք, եւ միւսանգամ գալստեան քո մնամք. եւ եղիցի ողորմութիւն քո ի վերայ մեր:*[19]

**Ը.** — *Ի ծածուկ քահանայն. Յորժամ յիշատակեմք զմահ միածնի Որդւոյ քո եւ զերեքաւրեայ յարութիւն նորա՝ որ ի մեռելոց, եւ զհամբարձումն նորա առ քեզ յերկինս, եւ զնստելն ընդ աջմէ քո Հայր, եւ զահաւոր եւ զփառաւորեալ գալուստ նորա միւսանգամ,*[20] — *ի ձայն բարձր,* —

---

անհրաժեշտ է: ‖[141] L "զմահ իմ պատմիցէք:" ‖[149] կարելի է նաեւ "ի ձայն բարձր գոչեմք" եւն կարդալ, ուստի նոյն բառերը չհամարիլ խորագիր, այլ բնագրի մասն:

Է. [15] Աւելի լաւ կ'ըլլար եթէ կարդայինք "բեկանի եւ տուեալ լինի:" Մնացեալը նոյն է տարբերակներու հետ, որոնք սակայն չունին յաջորդ նախադասութեան սկիզբն "Ծած" եւ յետոյ "Բարձր" խորագիրները:

[16] Անկախ կէտերով կեցած "գինի" բառը կը ցուցնէ որ հոս բառեր ինկած կամ հանուած են. անկարելի է որ թարգմանիչէն ըլլայ "Եւ զբաժակն յետ ընթրեացն էառ, գինի, եւ եցոյց" անիմաստ նախադասութիւն մը: Փակագծի մէջ աւելցուցինք պակսած "խառնեաց" եւ "ջուր" բառերն, թէեւ մենք աւելի կ'ուզէինք կարդալ "խառնեաց ի գինւոյ եւ ի ջրոյ", ինչպէս կը պահանջէ SR (p. 107) ܚܠܛ ܚܡܪܐ ܥܡ ܡ̈ܝܐ, զոր JA այլ ունի՝ miscens vino et aqua. Իսկ JB ամենեւին չունի նախադասութիւնս եւ ոչ "գինի". ուստի Հայն հոս այլ համաձայն է SR եւ JA բնագրաց:

[17] Տարբերակներ կը յաւելուն՝ "եւ ի կեանս յաւիտենականս:"

[18] Տարբերակներ "զյարութիւն իմ" փխ. "զգալուստ:"

[19] Շատ համառօտ կերպով նշանակած է JB այս կտորը. SR եւ JA համայն պէս լիակատար են, միայն թէ "գալստեան քո մնամք" խօսքին կը կցեն՝ "խնդրեմք ի քէն ողորմութիւն եւ զշնորհս, հայցեմք զթողութիւն մեղաց. եւ եղիցի" եւն:

[20] Հոս հայերէնը համառօտ է. տարբերակներ նախ կ'աւարտեն աղօթքն այսպէս՝ "վասն որոյ մատուցանեմք քեզ զայս պատարագ անարիւն, եւ մի՛ ըստ յանցանաց մերոց արարցես մեզ եւ մի՛ ըստ մեղաց մերոց հատուցանիցես մեզ, այլ ըստ բազում ողորմութեան քո ընջեա զյանցանս մեր՝ զծառայից քոց: Զի ժողովուրդ քո եւ ժառանգութիւն քո աղաչէ զքեզ եւ քեւ զՀայր քո, ասելով. Ժող. Ողորմեա եւն: Քհ. Մեք, եւն: Ժող. Գովեմք զքեզ, օրհնեմք զքեզ, եւն: ("Յամենայնի օրհնեալ ես Տէր" եւն:) Քհ. Կոչումն Հոգւոյն սրբոյ: Սրկ. Զիարդ ահեղ է ժամս

*գոչեմք եւ ասեմք. Լուր մեզ Տէր, լուր եւ ողորմեա մեզ, եւ առաքեա ի մեզ եւ յառաջի եդեալ հացս † յայս զսուրբ Հոգին զէակից եւ զփառակից Որդւոյ քո: Որպէս զի արասցէ զհացս զայս մարմին † կենարար, մարմին փրկչական, մարմին երկնային, ազատիչ հոգւոյ եւ մարմնոյ. եւ զբաժակս զայս արիւն Նորոյ ուխտի, արիւն փրկչական, արիւն կենարար, արիւն երկնային, ազատիչ հոգւոց եւ մարմնոց ամենայն հաւատացելոց:*[21] — *Դպ.. Ամէն:*

### ՅԻՇԱՏԱԿՔ

Խ.. — Զայս երիցս անգամ ասելով քահանայն: Եւ ապա երկրպագէ երիցս անգամ սուրբ խորհրդոյն, եւ համբուրէ զսեղանն, եւ ասէ զաղաւթս ի ծածուկ.[22] *Որպէս զի լիցի սա ամենեցուն՝ որք հաղորդին, ի սրբութիւն անձանց եւ ի պարկեշտութիւն հոգւոց եւ մարմնոց եւ ի լրութիւն ամենայն գործոց բարեաց: Վասն որոյ եւ մեք, մարդասէր Տէր, երկիր պագանեմք եւ աղաչեմք եւ խնդրեմք ի քէն, լուր մեզ եւ ընկալ ի ձեռաց մերոց զընծայեալս՝ մարմին քո եւ արիւն, եւ պարգեւեա սովաւ զխաղաղութիւն ամենայն աշխարհի եւ զհաստատութիւն սրբոյ եկեղեցւոյ՝ այնմ որ եդաւ հիմն ի վերայ վիմին հաւատոյ, այսինքն դաւանութեանն Պետրոսի, եւ պահեա հաստատուն մինչեւ ի կատարած աշխարհի:*[23]

[24]*Սովաւ եւ աւդոց շնորհեա զբարեխառնութիւն եւ անդոց զպտղաբերութիւն: Յիշեա Տէր եւ զայնոսիկ, որ ի բանտս արկեալ կան եւ ի կապանս,*

---

Թ. ‖157—58 Երկու անգամի տեղ L “երիցս անգամ:„ ‖167 L “եւ անդէոց այս, եւն: Քհ. Լուր ինձ: Ողորմեա մեզ, Աստուած Հայր, եւ առաքեա ի մեզ„ եւն: Վերջինս որ Կոչման աղօթքն է կայ արդէն հայերէնին մէջ կցուած նախընթաց աղօթքին, մինչ ըստ աւանդականաց անկախ ըլլալու էր:

21 Կոչման աղօթքն աւելի SR եւ JA բնագրաց համեմատ է. հոն միայն կայ “մարմին երկնային, ազատիչ հոգւոց եւ մարմնոց„ (որմէ ետքն աւանդականք՝ “Ժող. Ամէն. Քհ. Եւ զխառնուրդ որ է ի բաժակիս, արասցէ արիւն„ եւն), նոյնպէս՝ “արիւն երկնային„ եւն: Սակայն աւանդականք ունին նաեւ “Մարմին Տեառն Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, ի թողութիւն մեղաց եւ ի կեանս յաւիտենականս որք ընդունին զսա… արիւն Տեառն Աստուծոյ եւ փրկչին„ եւն (նոյն կերպով), զոր չունին Հայն: Փոքր մանրամասնութեանց տարբերութիւնք ի հարկէ շատ աւելի են:

Թ. [22] Այս խորագիրը չունին Աւանդականք:

[23] JB այսպէս. “Զի արբեսցէ զհոգիս եւ զմարմինս որոց հաղորդին, ի բերել զպտուղ գործոց բարեաց, եւ ի հաղորդութիւն սրբոյ եկեղեցւոյ՝ որ հաստատեալ ի վերայ վիմին հաւատոյ եւ ոչ յաղթահարի ի դրանց դժոխոց: Եւ փրկեա զնա ի գայթակղութեանց հերետիկոսաց մինչեւ ի վախճան, եւ մատուսցէ քեզ փառս եւ գովութիւն եւ միածնի Որդւոյ քում եւն: Ամէն: Սրկ. Յաղօթս կացցուք: Քհ. Խոնարհէ. Մատուցանեմք քեզ զպատարագս զայս անարիւն վասն սրբոյ Սիոնի մօր ամենայն եկեղեցեաց եւ վասն եկեղեցւոյ քո սրբոյ, զի շնորհեսցես նմա զպարգեւ Հոգւոյդ քո սրբոյ:„ Գրեթէ նոյնպէս (քիչ մ'աւելի ընդարձակ) նաեւ SR եւ JA, ուստի Հ. շատ կը շեղի հոս, ինչպէս նաեւ յաջորդներուն մէջ:

24 Անկէ սկսեալ մինչեւ բուն Յիշատակքն (Հատ. Ժ.) չափազանց տարբեր է հայերէնը, բոլորովին ուրիշ կարգաւ ունենալով խնդրուածքներն եւ ուրիշ խմբագրութեամբ: Գրեթէ ամէն բան որ հոս կայ, կայ նաեւ ի SR եւ JA եւ համառօտ նաեւ ի JB. բայց այսպէս՝ որ դէմ առ դէմ համեմատել գրեթէ կարելի չէ: Ամենէն աւելի հոս կը տեսնուի պայծառ կերպով որ Հ. այժմու տարի բնագրաց եւ ոչ միայն ուղղակի

եւ որք յաքսորս են, եղբարք մեր, եւ զհիւանդս եւ զտապացեալսն[25] եւ զայսահարսն եւ զամենայն վտանգեալս ի պէսպէս ախտից։

Յիշեա Տէր եւ զաղքատութիւնս իմ, որ ոչ եմ արժանի կոչել յաստիճանս յայս ահաւոր. եւ մի յիշեր զմեղս մանկութեան եւ զանգիտութեան իմոյ, այլ յիշեա զիս Տէր վասն բազում ողորմութեան քո. զի ի քէն է քաւութիւն եւ ամենեցուն աչք ի քեզ հային, եւ բանաս զամենախնամ ձեռն քո եւ կերակրես զամենեսեան առատապէս քաղցրութեամբ կամաւք քո։

Փրկեա զմեզ, Տէր Աստուած մեր, յամենայն նեղութենէ եւ ի բարկութենէ եւ յամենայն պատահարաց՝[26] որ գան ի վերայ մեր. եւ պահեա զմեզ ուղղափառ հաւատով ի պատուիրանս քո, եւ զամենեսեան որք արժանի եղեն կալ առաջի քո ի սուրբ եկեղեցւոջ եւ մնան առատապէս ողորմութեան քո։

[27]Յիշեա Տէր եւ զսուրբ եպիսկոպոսունս մեր եւ զամենեսեան՝ որք ուղղութեամբ առաջնորդեցին մեզ բանիւ եւ գործով ի ճշմարիտ կրաւնս եւ ի վարս։ Նմանապէս զեպիսկոպոսապետն մեր եւ զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս՝ որք ուղիղ վարուք շրջեցան յաշխարհի։ Յիշեա եւ զորս ընդ մեզ պատուական երիցունս եւ զսարկաւագունս եւ զամենայն սպասաւորս եկեղեցւոյ եւ զամենայն դասս պաշտաւնէից, որք սրբութեամբ պաշտեցին զամենայն աւուրս կենաց իւրեանց։

Յիշեա եւ զորս ընդ մեզ կանգնեալ կան եւ ընդ մեզ աղաւթեն, եւ զսուրբ հարսն մեր եւ զեղբարսն եւ զերանելի եւ զլուսափայլ վարդապետսն մեր եւ զայնոսիկ՝ որք ոչ յիշատակեցան յանուանէ, եւ որք աղաչեցին զմեզ եւ խնդրեցին աղաւթել. պարգեւեա իւրաքանչիւր, Տէր Աստուած մեր, զխնդրուածս նոցա. եւ որք մատուցին զպատարագս ի վերայ սրբոյ սեղանոյ քո, եւ որք կամեցան մատուցանել եւ ոչ ունին կարողութիւն. եւ զամենեսեան որ վասն բարի գործոց իւրեանց աստ յիշատակեցան, եւ զամենեսեան արս եւ զկանայս զհաւատով վախճանեալսն։

---

զպտղաբերութիւն„ եւն։ ||171 L “յաշտիճան։„ ||180 L “զսուրբ եպիսկոպոսունքն մեր։„ ||188—89 L “զսուրբ հարքն մեր եւ զեղբարքն եւ զերանելի . . . վարդապետքն մեր„ եւն։ ||200 L “Ստեփաննոս։„

թարգմանութիւնն է։ Աւելորդ կը համարինք ըստ այսմ նոր թարգմանութեանց յառաջ բերել տարբերակքն. (տես Renaudot, II, 34—5 եւ 129։) Յաւելուածով կը յիշենք միայն մէկ երկու ուշադրութեան արժանի կէտեր։

25 “Զտապացեալ„ գրչէ սխալ մըն է արդեօք փխ. “զտառապեալս։„ JB ասոր տեղ կ'ըսէ Memento ... infirmorum, variisque morbis laborantium (“...զհիւանդս եւ զտառապեալս ի պէսպէս ախտից, եւ զայսահարս„ եւն։) Բայց որովհետեւ արդէն Հ. ալ ունի քիչ մ'ետքն “եւ տանջեալս ի պէսպէս ախտից.„ թերեւս լաւ է թողուլ նաեւ “զտապացեալս„ իւր տեղն իբրեւ խնդրուածք ջերմեռանդ աղաչութեան։ Անկէ ետքն է ի JB խնդրուածք վասն “օրհնութեան օդոյ եւ պտղոյ տարւոյն„. որ հայերէնին մէջ անկէ յառաջ կար ուրիշ ձեւով։

26 “Յամենայն պատահարաց„ եւն. տարբերակք՝ “յամենայն պատուհասէ„ եւն (R. ab omni plaga.) արդէն հայերէնն ալ՝ որ յետնադարու բացատրութիւն մըն է, նոյն ընդհանուր իմաստն ունի,

27 Եպիսկոպոսին եւ եկեղեցականաց յիշատակութիւնն տարբերակաց մէջ ամենէն յառաջ է JB բոլորովին համառօտ, իսկ JA եւ SR աւելի հայերէնին նման, մասամբ աւելի ճոխ ալ։

Վերաձայնէ քահանայն. Ընդ որս եւ մեզ այց արասցես, բարերար Տէր, աղաչեմք[28]։

Սուրբ զերկնային զաւրութիւնս, զսերովբէսն եւ քերովբէս, եւ զտիրուհին մեր զԱստուածածինն եւ զմիշտ կոյսն Մարիամ, եւ զյառաջընթաց Կարապետ եւ զՄկրտիչն քո սուրբ զՅովհաննէս, եւ զնախավկայն քո զսուրբն Ստեփանոս, եւ զերջանիկ առաքեալսն զՊետրոս եւ զՊաւղոս եւ զՅովհաննէս եւ զՅակոբոս զեղբայր քո զառաջին պատրիարգն Երուսաղէմի, եւ զամենայն սուրբ եւ որոց այսաւր է յիշատակ։

Ժ. — [29]Ու այլ յիշէ ի սրբոցն զոր կամի: Իսկ եթէ սարկաւագ է ի խորանն՝ զԱռաքելոցն ասասցէ: Ու քահանայն աղաւթէ ի ծածուկ. [30]Աղաչեմք եւ խնդրեմք ի քէն, մարդասէր Տէր, վասն կամաւոր մահուան եւ չարչարանաց Որդւոյ քո, թուեա զմեզ ընդ երանելի եւ սուրբ ժողովուրդսն որք ճշմարիտ եւ ուղիղ վարուք եղեն յաշխարհէ, եւ ընդ այնմ եկեղեցւոյ՝ որ յերկինս են, որոց անուանքն գրեալ են ի դպրութեան կենաց, եւ ընդ երջանիկ հարսն եւ սուրբ վկայսն՝ զոր այժմ յիշատակեցաք յանուանէ։

Յիշեա Տէր եւ զսուրբ կաթուղիկէ եկեղեցի քո, զոր փրկեցեր պատուական արեամբ միածնի Որդւոյ քո. եւ դադարեցո զհերձուած եւ զամենայն ուսումն չար. եւ միացո սիրով եւ խաղաղութեամբ զամենայն անդամս եկեղեցւոյ զմեծամեծս եւ զփոքունս։

Սրկ. ի ձայն.[31] Եւս առաւել զբարեպաշտ եւ զերկեղած թագաւորն մեր մեր եւ զամենայն թագաւորս քրիստոնէից. տուր նոցա զէն յաղթութեան եւ

Ժ. ‖[203] L “յիշէ ի սրբոցն զոր կամին„ եւն։ ‖[208] L “գրեալ են ի դպրութիւն կենաց։„ ‖[214] Նախնաբար գրուած էր ի L “զերկեղած թագաւորս մեր,„

[28] “Ընդ որս եւ մեզ„ եւն չկայ ասորականաց մէջ, եւ առնուած է Հայոց ծանօթ ուրիշ պատարագներէն։ Նոյնպէս յաջորդը՝ “Սուրբ զերկնային զօրութիւնս„ եւն։ (— Յիշատակացս համար տես ընդհանրապէս Բարուզի եւ Ռոկկերբանի յիշատակքն, ուր շատ բան կայ նոյնպէս, եւ նաեւ բառ առ բառ։ —) Ասորականք ուրիշ ձեւով ունին վերջինս, զոր օր. JB այսպէս՝ “Քհ. խոնարհէ. Զի իշխան ես դու կենդանեաց եւ մեռելոց. յիշեա զսուրբ Հայրս, զՄարգարէս, զԱռաքեալս, զԿուսանս, զԱստուածածինն, զՅովհ. Մկրտիչ, զՍտեփանոս, զՄարտիրոսս եւ զամենայն արդարս.„ նոյներն քիչ մ'աւելի ճոխ SR եւ JA.

Ժ. [29] Խորանագիրս չունին Ասորականք, որ միայն կը յայտարարեն թէ յաջորդ աղօթքն “ի ձայն բարձր„ ըսելու է քահանայն։

[30] Այս բուն Յիշատակաց համար ալ նոյնն ըսել պէտք է ինչ որ ըսինք նախընթաց Յիշատակաց համար. այսինքն հայոյն ամէն խօսք կայ նաեւ ասորականաց քով, բայց ուրիշ խմբագրութեամբ, յաճախ ուրիշ տեղ եւ աւելի կամ նուազ մասերով։ Երկար Յիշատակքս անհնար է ի հարկէ յառաջ բերել նոր թարգմանութեամբ ասորականաց համեմատ. (տես Renaudot, II, 36—39 եւ 130—131։) Օրինակի համար առաջին կտորն այսպէս է ի JB (քիչ տարբերութեամբ նաեւ SR եւ JA.) “Աղաչեմք զքեզ Տէր, զի զօրացուսցես զակարութիւնս մեր. միացո (“թուեա„) զմեզ ընդ անդրանիկս գրեալս ի յերկինս։ Վասն այնորիկ յիշատակեմք զնոսա, զի եւ նոքա յիշատակեսցեն մեր լեցին առաջի քո եւ հաղորդեսցին ընդ մեզ այսմ հոգեւոր պատարագի՝ ի պահպանութիւն կենդանեաց, ի զօրացումն հիւանդացելոցն ի մեզ, եւ ի հանգիստ ննջեցելոց որք հանգեան՝ հարց, եղբարց եւ վարդապետաց մերոց, շնորհօք եւ ողորմութեամբ միածնի Որդւոյ քո, եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ„ եւն։ — Տող մ'անգամ բառ առ բառ չէ հոս հայերէնին հետ. նոյնպէս՝ յաջորդները։

[31] Թագաւորաց յիշատակութիւնս աւելի համեմատ է SR եւ JA բնագրաց (JB համառօտ), որոնք սակայն հոս չունին այս մաղթանքն, այլ

արի յաւգնականութիւն նոցա յամենայն պատերազմունս բարբարոսաց, եւ զամենայն թշնամիս նոցա խորտակեա ընդ ոտիւք նոցա. որպէս զի մեք կենդանիքս վայելեսցուք ի շնորհս նոցա. վասն զի դու ես աւգնական եւ առաջնորդ ամենեցուն որ խնդրեն ի քէն, մարդասէր Տէր. եւ քեզ փառք յաւիտեանս:

Քահանայն. Յիշեա Տէր եւ զքահանայապետն մեր եւ զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս, եւ զայնոսիկ որ յառաջագոյն հանգեան ի քուն խաղաղութեան, եւ որք ճշմարիտ խաւսիւք եւ ուղեղ վարդապետութեամբ կացին յաշխարհի, եւ զբազում դարձուցին յաստուածգիտութիւն:

Դու առաւել զսրբազան լաբունիսն եւ զառաջնորդսն եկեղեցւոյ, որք ի սրբոյն Յակոբայ յեղբաւրէ քո, մինչեւ ցայժմ քարոզք եւ տնտեսք կացին սրբազան ժողովրդեան քո[32], եւ որք քաջացան ընդդէմ ամբարիշտ բռնաւորացն, եւ ածեալ եղեն յատեանս եւ ի հրապարակս առաջի թագաւորաց եւ հեթանոսաց վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյ: Զվարդապետութիւն եւ զխոստովանութիւն սուրբ հաւատոյ նոցա հաստատեա յանձինս մեր, եւ աղաւթիւք նոցա եւ աղաչանաւք պարգեւեա զխաղաղութիւն սուրբ եկեղեցեաց քոց: Դու կացո զմեզ առաջի ահաւոր բեմի քո առանց ամաւթոյ:

[33]Յիշեա Տէր եւ զամենայն քահանայս զկենդանիս եւ զհանգուցեալսն, եւ զարքաւագունս եւ զկէս-սարկաւագունս, եւ զկղերիկոս, եւ զգրակարդացսն, եւ զթարգմանիչսն, եւ զերդմնեցուցիչս, եւ զկրաւնաւորս, եւ զաւաղս, եւ զկուսանս, զերիտասարդս եւ զամենայն հաւատացեալ քրիստոնեայս եւ վասն որոց զպատարագս մատուցանեմք:

Աստուած հոգւոց եւ ամենայն մարմնոց, զամենեսեան յիշեա՝ զչարս եւ զբարիս. զչարսն դարձո եւ բարեացն վերակացու լեր. հիւանդացն առողջութիւն շնորհեա. եւ որք ի բանդի են եւ ի կապանս են՝ արձակումն, եւ ամենայն

---

յետոյ եղած "թագաւորն մեր:" ‖[221] L "հանգեան:" ‖[224] L "Նա եւս առաւել զսրբազան լաբունեաց եւ զառաջնորդսն" եւն: ‖[233] L "եւ զկլերիկոսն:" ‖[245] Արմաշ նաեւ կարդացուիլ՝ "եւ վասն որոյ զպատարագս" եւն:

նախընթաց յիշատակաց մէջ (Հատ. Թ.) գրեթէ այն տեղն ուր հայերէնն "Ընդ որս եւ մեզ այց արասցես" եւն ներմուծած էր: Դարձեալ ոչ թէ "Սբ. է յ-յ" կ'ըսէ մաղթանքս, ինչպէս ունի հատ Հ., այլ քահանայն ի կարգի ուրիշ յիշատակաց:

[32] Յակոբայ առաքելոյ անուն կրող պատարագիս մէջ նոյն առաքելոյ յիշատակութիւնն միայն հայերէնին յատուկ չէ. նոյնպէս ունին նաեւ ասորականք: Այսպէս կ'ըսէ JA "Յիշեա Տէր եւ զեպիսկոպոսունս, որ յառաջագոյն հանգեան, որ մատակարարեցին մեզ զբան ճշմարտութեան. որ ի Յակոբայ գլխաւորէ եպիսկոպոսաց, յառաքելոյ եւ մարտիրոսէ, մինչեւ ցայսօր զբան ուղղափառ հաւատոյ քարոզեցին յեկեղեցւոջ քում սրբոյ:" Ասկէ ետքն եկածը քիչ շատ նոյնպէս է նաեւ ի JA եւ JB, ուստի համեմատութեամբ նախընթացներուն աւելի համընթաց եւ համաձայն ասորականաց: Բայց նաեւ այս մասը բառ առ բառ չէ լեզուին:

[33] Ասկէ սկսեալ դարձեալ իրարու կը մերձենան հայերէնն եւ ասորականք, մանաւանդ գլխաւորապէս SR եւ JA (Renaudot, II, 37–9), մինչ JB քանի մը տողով կը լեցընէ միացեալ այս մասն (Renaudot, II, 130–1:) — Կիսասարկաւագաց կից "Կղերիկոսաց" յիշատակութեան տեղ SR եւ JA ունին "ասդմոսաղաց" յիշատակութիւնը, ուր առաջին ալ "փսաղտ" բառը կը գործածէ: Գրակարդացներու հետ "Յարգմանչաց"

մեղուցելոց՝ դարձ եւ փախուստ ի չարէն:[34] — Ի ձայն. — Զի դու ես Աստուած մեր. եւ քեզ փառս վերառաքեմք եւ միածնի Որդւոյ քո եւ ամենասուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ: — Ժող. Ամէն:

Քահանայն ի ծածուկ. Արժանացո զմեզ զամենեսեան խոստովանել յարքայութեան քում ընդ Աբրահամու, Սահակայ եւ Յակոբայ. եւ թող զխամնս մեր կամայ եւ զակամայ, զգիտութեան եւ զանգիտութեան, զբանից եւ զգործոց, զխորհրդոց եւ զմտաց. եւ զամենայն մեզս թող՝ Տէր Աստուած, եւ զկատարումն քրիստոնէութեանս մերոյ պահեա Տէր առանց մեղաց. եւ ժողովեա զմեզ ընդ հովանեաւ թեւոց քոց, ուր ժողովես զսուրբս քո: — Ի ձայն. — Եւ քեզ փառք, եւ պատիւ եւ միածնի Որդւոյ քում եւ կենդանարար սուրբ Հոգւոյդ: — Խաղաղութիւն ամենեցուն:

Քահ. դառնայ խաչ հանէ ի վերայ ժողովրդեան. Եղիցի ողորմութիւն Աստուծոյ Հաւր եւ խնամք մարդասէր Հոգւոյն սրբոյ ընդ ձեզ ամենեսեան:

[35] Ու քահանայն բեկանէ զհացն, եւ խաչանիշ տեառնագրէ զբաժակն. [զոր առնեն Աստրիք, որ ոչ ուղիղ է այս:]

## ԱՂԱՒԹՔ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ

ԺԱ. — Քհ. ի ծածուկ աղաւթէ.[36] Տէր Աստուած, Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, Հայր գթութեանց եւ Աստուած ամենայն մխիթարու-

‖244—45 L "թող զաղալանս մեր զկամս եւ զակամայ" եւն: ‖254 փակագծեալը

յիշուիլն ալ ճիշդ ասորւոյն համաձայն է, միայն կը կցուի հոն նաեւ "Ն– մէէ•ղ–:" Ասորւոյն համեմատ թարգմանուած է նաեւ "զկրօնաւորս" եւ "զղ––ղ–", այսինքն՝ զՈւՆկՆդիրս:

[34] Այս աղօթքին խօսքերն աւելի Բարսղի յիշատակներէն առնուած են քան թարգմանուած ասորերէնէ: Յաջորդը դարձեալ կը գտնուի միանալու ասորականաց հետ, որ առկէ սկսեալ մինչեւ յիշատակաց վերջն այսպէս ունին ըստ JA. "Տէր Աստուած հոգւոց եւ ամենայն մարմնոց, յիշեա զամենեսին՝ զորս յիշեմք, որք ուղղափառ հաւատովք ելին յաշխարհէս. տուր շնչոց, մարմնոց եւ հոգւոց նոցա զհանգիստ, փրկեա զնոսա յանվախճան հանդերձեալ դատապարտութենէ, եւ արժանացո խրախուսանաց ի գոգս Աբրահամու, Սահակայ եւ Յակոբայ, ուր լուսաւորէ լոյս երեսաց քոց, ուստի հեռի են ցաւք, անձկութիւնք եւ հեծութիւն... (— բաւական երկար մաս մ'որ չկայ ի Հ: —) Ժող. Զհանգիստ շնորհեա նոցա...: Քհ. Խնարհէ. Թող, ներեա, անտես արա, Աստուած, զմեղս մեր ամենեցուն զկամայ եւ զակամայ, զգիտութեան եւ զանգիտութեան, զգործեալ բանիւ, գործով կամ խորհրդով, զծածուկս եւ զյայտնիս, զհրապարակեալս, զհնացեալս եւն: Ի յայն բարձր. Զկատարումն քրիստոնէութեանս պահեա մեզ եւ առանց մեղաց. ժողովեա զմեզ ընդ ոտիւք ընտրելոց քոց (— Հ. լաւ եւս "ընդ հովանեաւ թեւոց քոց" —), յորժամ, ուր եւ որպէս եւ կամիս... զի եւ յայսմ, որպէս յամենայնի, գովեսցի եւ փառաւորեսցի անուն քո... եւ Հոգւոյդ քո սրբոյ: Ժող. Որպէս է եւ էր...: Քհ. Խաղաղութիւն: Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում: Քհ. Ողորմութիւն Աստուծոյ եղիցի ի վերայ մեր ամենեցուն:" (— Հ. "Եւ եղիցի ողորմութիւն" եւն, որ մեր պատարագին համեմատ է:) Ըստ այսմ ասորւոյն քով չկայ "Քհ. դառնայ խաչ հանէ" եւն խորագիրը:

[35] SR եւ JA չունին խորագիրս, բայց ունի JB, որ կ'ըսէ՝ "Sacerdos frangit et signat. Diaconus dicit Catholicam" ("Քհ. բեկանէ եւ տեառնագրէ. Սրկ. ասէ զԿաթուղիկէն:") Ի հարկէ "զոր առնեն Աստրիք" եւն փակագծեալը՝ եթէ ոչ հայ թարգմանչին, գոնէ որեւէ հայ գրչի մը յաւելուածն է: Ասորւոյն "կաթողիկէ" կոչած ընդարձակ քարոզութիւնը տես թարգմանուած առ Renaudot, II, 38—39:

ԺԱ. [36] JA աս խորագիրն ունի՝ "Քհ. ասէ նախ քան զաղօթս տէրունական." JB՝ "Քհ. ասէ

Թեանց, որ նստիս յանսարմին քերոբէս եւ փառաբանիս ի սերոբէից, որ երկիւղիւ առաջի քո կան հազարք հազարաց եւ բիւրք բիւրուց հրեշտակաց եւ հրեշտակապետաց եւ ամենայն բանակք անմարմնոցն. [37]որ ընկալար զպատարագ առաջին նահապետացն, Աբելի, Նոյի եւ Աբրահամու, յաւրինակ ճշմարիտ գառինդ Հաւր, որ եբարձ զմեղս աշխարհի։ Եւ այժմ մարդասէր Տէր, սրբեա զհոգի եւ զմարմին մեր, զի սուրբ սրտիւ եւ լուսաւոր հոգւով եւ առանց ամաւթոյ — ի ձայն — համարձակիմք կոչել զքեզ Աստուած երկնայինդ Հայր ասելով.

*Ժողովուրդն բազկա[տարած.]* Հայր մեր որ յերկինսդ ես, սուրբ եղիցի։

*Ու իբրեւ վճարի, քահանայն բարձր ասէ.* Դու Տէր Աստուած մեր ամենազաւր, մի տար զմեզ ի փորձութիւն. զի ոչ կարեմք համբերել. այլ փրկեա զմեզ ի չարէ եւ ապրեցո ի փորձութենէ. զի քո է արքայութիւն եւ զաւրութիւն եւ փառք։ — Խաղաղութիւն ընդ ամենեսեան։ — *Ժող.* Եւ ընդ հոգւոյդ քում։ — *Սրկ.* Աստուծոյ երկրպագեսցուք։[38]

## ՎԵՐԱՑՈՒՑՈՒՄՆ ԵՒ ՃԱՇԱԿՈՒՄՆ

ԺԲ. — [39]*Քհ.* Քեզ Տէր Աստուած մեր, Հոգիդ սուրբ Աստուած ճշմարիտ, խոնարհեցուցանեն ծառայք քո զգլուխս իւրեանց, եւ մնան ողորմութեան քո մեծի. զկատարեալ աւրհնութիւն քո առաքեա ի վերայ մեր եւ ամենայն ժողովրդեանս, եւ սրբեա զմեզ եւ զսոսա յամենայն մեղաց. զի արժանի լիցուք ճաշակել ի պատուական մարմնոյ եւ յարենէ Տեառնդ մերոյ եւ փրկչիդ Յիսուսի Քրիստոսի. — *Ի ձայն.* — ընդ որում քեզ Հոգւոյդ սրբոյ եւ Հաւրդ ամենակալի փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ։

---

կայ L ձեռագրին մէջ, բայց յայտնապէս բնագրին չվերաբերելով՝ դրինք այսպէս։

զաղօթս նախ քան զՀայր մեր։" Աղօթքն համեմատ է աւելի SR եւ JA-ի. (JB չունի օրինակի համար "Հայր գթութեանց եւ Աստուած ամենայն մխիթարութեանց" բառերը, եւն։)

[37] "Որ ընկալար" մինչեւ "եբարձ զմեղս աշխարհի" չունին տարբերակները. այլ տար տեղ այսպէս կ'ըսեն (JA)՝ "որ զընծայս նուիրեալս քեզ ի սրբոց եւ ի բերոց պաշտօնից ի հոտ անուշութեան արժանի համարեցար ընդունել եւ կատարել շնորհաւք միածնի Որդւոյ քո եւ հեղմամբ Հոգւոյդ քո սրբոյ։ Սրբեա այժմ Տէր զշունչս մեր եւ զմարմինս եւ զհոգիս մեր, զի սուրբ սրտիւ եւ լուսաւոր հոգւով, առանց ամօթոյ համարձակեսցուք կոչել զքեզ Աստուած երկնային, Հայր ամենակարող, աղօթեսցուք եւ ասասցուք. Հայր մեր որ ես յերկինս։ Ժող. Սուրբ եղիցի՝ անուն քո" եւն։ Նոյնպէս նաեւ JB, որոնց վերջին նախադասութիւնն արդէն ճիշդ նոյն է հայերէնին հետ, միայն թէ "Հայր մեր որ ես յերկինս" բառերը հոս դրեր՝ թերեւս նաեւ թարգմանիչը՝ ժողովրդեան տուեր է, որ տարբեր օրինակից եւ տարբական սովորութեան համեմատ քահանային ըսել պէտք է։ Տէրունական աղօթքը "[illegible]" ընելու խրատագիրը չունին տարբերակները։

[38] Առոր տեղ տարբերակները՝ "Սրկ. Զգլուխս ձեր խոնարհեցուցէք առաջի Աստուծոյ ողորմածի" եւն։

ԺԲ. [39] Աղօթքը թեթեւ տարբերութեամբ նոյն է տարբերակներու ունեցածին հետ. հայոյն յատուկ են օրինակի համար սկզբան "Տէր Աստուած մեր, Հոգիդ սուրբ Աստուած ճշմարիտ" բառերը։

*Վերածայն.* Եղիցի շնորհք սուրբ Երրորդութեանն անեղին եւ մշտնջենաւորին Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ ընդ ձեզ ամենեսին: — *Ժող.* Ամէն: — *Սրկ.* Երկեղիւ նայեցարուք:[40]

[41]*Քահանայն առնու զհացն երկու ձեռաւքն վերացուցանէ ասելով.* Ի սրբութիւնս սրբոց: — *Ժող.* Միայն Հայր սուրբ: Միայն Որդի սուրբ: Միայն Հոգի սուրբ յաւիտեան:[42] *Քահանայն զբաժակն ի վեր ընծայէ ասելով.* Աւրհնութիւն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից: Միայն Հայր սուրբ ընդ մեզ: Միայն Որդի սուրբ ընդ մեզ: Միայն Հոգի սուրբ ընդ մեզ յաւիտեան:

*Եւ ապա ճաշակէ ի սուրբ մարմնոյ եւ յարենէ Տեառն. եւ առնու սարկաւագն զսկիհն ի ձեռն, եւ դառնայ ժողովրդեան ասելով.* Երկեղիւ եւ զգուշութեամբ յառաջ մատիք: — *Ժողովուրդն խոնարհին եւ ասեն.* Աստուած մեր երեւեցաւ մեզ, աւրհնեալ եկեալ անուամբ Տեառն: — *Նոյնպէս եւ այլ խորհրդածութիւնքն կատարին որպէս եւ յայլսն:*[43]

### ԱՂԱՒԹՔ ԳՈՀՈՒԹԵԱՆ

ԺԳ. — *Քհ.*[44] Գոհանամք եւ փառաւորեմք զքեզ, մարդասէր Տէր. առաւելապէս գոհանամք զքէն վասն մեծի եւ անպատում մարդասիրութեանդ քո. որ արժանի արարեր զմեզ հաղորդել ի մարմնոյ եւ յարենէ քումմէ. մի դատապարտեր զմեզ ի մեղաց մերոց. այլ պահեա զմեզ արդարութեամբ եւ

---

40 Հոս SR եւ JA քահանային ըսել կուտան՝ "Սուրբ, սուրբ. սուրբ, Տէր զօրութեանց լի են երկինք„ եւն. որ չկայ ի JB.

41 Այսպէս նաեւ SR, զոր JA կը թարգմանէ՝ Et post pauca Eucharistiam accipiens in manibus, dicit illa voce եւն: — "Ի սրբութիւնս սրբոց„ հայերէն պատարագաց համեմատ փոխած է թարգմանիչը. տարբեր՝ "Սրբութիւնք սրբոց տուեալ լինին կատարելութեամբ, մաքրութեամբ եւ սրբութեամբ:„

42 Ասորին (JA) կը յաւելու՝ "Եղիցի անուն Տեառն օրհնեալ, որ մի է յերկինս եւ յերկրի. նմա փառք յաւիտեանս: Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, որ զամենայն սրբէ եւ զամենայն քաւէ:„ — Առոր անմիջապէս յաջորդող կարճ խրատագիրս չունին տարրականք: Քահանային ըսելիքն ալ բարեփոխուած է Հայոց սովորական պատարագին համեմատ: JA այսպէս ունի. "Տէր, ճշմարիտ եւ արդարեւ հաւատամք, եւ ի քեզ հաւատամք, որպէս հաւատոյ ի քեզ սուրբ եւ կաթուղիկէ եկեղեցի, զի մի ես Հայր սուրբ, որում փառք, ամէն. մի Որդի սուրբ, որում գովութիւն, ամէն. մի Հոգի սուրբ, որում փառք եւ գոհութիւն ի յաւիտեանս ամէն:„ — Ընդարձակը (JA) հոս երկար քարոզութիւն մը կը կցէ Սարկաւագին ըսելու (Renaudot, II, 40.) JB այս ամէն մասերն քանի մը համառօտութեամբ նշանակելով շատցած է:

43 Ճաշակման եւ հաղորդութեան մասին այս խրատագիրքս եւ կարծիքն Հայոց սովորական պատարագէն քաղուած են: JA բաւական երկար է այստեղ (Renaudot, II, 41,) զոր կ'երեւայ թէ հայ թարգմանիչն առջեւը չունէր իւր օրինակին մէջ, ինչպէս JB պէտք չէ տեսած օրինակել:

ԺԳ. 44 Թէ JA եւ թէ JB "Աղօթք գոհութեան„ խորագիրը գրած են այս մաղթանքիս: Մաղթանքն աւելի JA բնագրին ընթերցուածոց մերձաւոր է, սակայն ոչ բոլորովին նոյն. օրինակի համար յատուկ է հայոյն՝ "մի դատապարտեր զմեզ ի մեղաց մերոց„ (այսինքն՝ "վասն մեղաց մերոց„. որուն տեղ ասորին կ'ըսէ՝ "մի դատապարտեր զմեզ վասն ընդունելոյ զսուրբ եւ զանարատ խորհուրդս քո:„) — "...Ընդ սուրբս քո, որք յաւիտենից անտի հաճոյացան„ Նոյնպէս յատուկ է հայոյն՝ կէսը JA եւ կէսը JB բնագրաց համաձայն. (առաջինն ունի՝ "ընդ ամենայն սուրբս քո, որ յոյժ աշխարհէ անդ հաճոյացան.„ երկրորդը "ընդ ամենայն սուրբս քո որք ի յաւիտենից եղեն„) սակայն "յաւիտեան„ եւ "աշխարհ„ բառերը միեւնոյն կերպով կը բացատրուին Ասորւոյն մէջ՝

սրբութեամբ. որպէս զի եւ մեք ճաշակելով զմարմին քո եւ զարիւն՝ մասն եւ բաժին ընկալցուք ընդ ամենայն սուրբս քո, որք յաւիտենից քեզ բարեհաճոյացան. զի սուրբ ես Աստուած մեր. եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ։

Սարկաւագն վերացուցանէ զսկիհն եւ համբուրէ, եւ դնէ ի յերկրորդ ընծայանոցն։[45] Սրկ. Առաջի քո Տէր ողորմած զգլուխս մեր խոնարհեցուցանեմք[46]։

## ԱՂԱԻԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑԻՈՅ

Ժող. — [47]Քահանայն ի մէջ եկեղեցւոյն. Աստուած որ մեծ ես եւ ահաւոր, որ խոնարհեցար յերկնից եւ իջեր յերկիր եւ առեր մարմին ի սրբոյ կուսէն Մարիամայ վասն փրկութեան մարդկան, առաքեա ի վերայ մեր զողորմութիւն քո եւ զգթութիւն. աւրհնեա զժողովուրդս քո, եւ պահեա զժառանգութիւնս քո ամբողջ. զպրուսն եկեղեցւոյ քո պահեա, եւ սրբեա զսոսա որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո. եւ զմեզ փառաւորեա աստուածային զաւրութեամբ քո. զխաղաղութիւն քո պարգեւեա ամենայն աշխարհի, եկեղեցեաց, քահանայից, թագաւորաց քրիստոնէից եւ բարեպաշտ թագաւորին մերոյ եւ տեառն, զինուորեալ մանկանց նորա եւ ամենայն ժողովրդեանս. որպէս զի յամենայն ժամ եւ այժմ փառաւորեսցուք զՏէր մեր ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյն, այժմ։

---

Ժ.Գ. ‖[320] Վերջը կայ ի L յիշատակարանս՝ "Ով սուրբ քահանայք, որք աղօթէք ի սուրբ մատեանս յայս, յիշեսջիք զարտասուաց արժանի զՆիկօլ, եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս։"

ܡܢ ܥܠܡܝܢ կամ ܡܢ ܥܠܡܐ ("ի յաւիտենից" եւ "յաշխարհէ.") ուստի կրնանք ըսել որ JA եւ SR հայերէնէն չի տարբերիր հոս։

[45] Առորականք չունին այս խրատագիրը։

[46] Առորականք այս "Խոնարհեցուցման" քարոզութիւնը չունին հոս, որ կարծենք չէ ալ յարմարիր այս տեղւոյ. բուն տեղն էր վերը (տես Ծան. 37) վերացմանէն յառաջ, ուր հայը "Աստուծոյ երկրպագեսցուք" գրած էր։ Ասոր տեղ կ'ըսէ ասորին՝ "Քհ. Խաղաղութիւն։ Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում։ Սրկ. Եւ եւս վասն կատարման որբոց խորհրդոցս զՏէր աղաչեսցուք։"

Ժ.Գ. [47] Այս ի մէջ եկեղեցւոյ աղօթքն կամ արդէն թարգմանչէն եւ կամ գոնէ հայ գրչէ մ'ընդլայնուած է, եւ նմանցուած Ոսկեբերանի պատարագի համանուն վերջին աղօթքին՝ "Որ օրհնես զայնոսիկ" եւն, ինչպէս պարզ համեմատութիւն մ'ալ կը ցուցնէ յայտնապէս։ Ասորին այսպէս ունի (JA.) "Աստուած մեծ եւ զարմանալի, որ խոնարհեցուցեր զերկինս եւ իջեր վասն մարդկան փրկութեան, նայեա ի մեզ վասն գթութեան եւ շնորհաց քոց. օրհնեա զժողովուրդ քո եւ զժառանգութիւն քո պահեա. զի միշտ եւ յամենայն ժամանակի գովեսցուք զքեզ. զի միայն ես ճշմարիտ Աստուած, եւ զԱստուած Հայր զծնող քո եւ զՀոգի քո սուրբ, այժմ" եւն։ JB աւելի համառօտ է չունենալով նաեւ "օրհնեա զժողովուրդ քո եւ պահեա զժառանգութիւն քո" նախադասութիւնքն, որոնք մի միակ են ասորի աղօթքին մէջ որ Ոսկեբերանի յիշեալ աղօթքը կը յիշեցնեն։

[48] "Եղիցի անուն Տեառն օրհնեալ," Քահանային "Կատարումն Օրինաց" եւն, եւ Ժողովրդեան "Օրհնեցից զՏէր" եւն Հայոց սովորական պատարագէն ներմուծուած են հոս։ Ասորին (JA) այսպէս կ'աւարտէ յիշեալ "ի մէջ եկեղեցւոյ" աղօթքէն ետքը՝ "Ժող. Ամէն։ Սրկ. Օրհնեա Տէր։ Քհ. Օրհնեա զամենեսեան, պահեա զամենեսեան արարածս եւն։ Կամ զայլ օրհնութիւն [illegible]

յաջորդ պատարագը։ Լամբրոնեան պատարագի մէջ, ուր Ներսէս ծոխացուց Հայոց խորհրդատետրն բիւզանդականաց համեմատ, արդէն գործածուած է Հռովմայեցւոց նուիրագործութիւնս ալ։ Բովանդակ Պատրաստութիւնն կամ Զգեստաւորման մասն (տես վարը հտծ. Ա) առած է Լամբրոնացի իւր ծոխացմանց կարգին մէջ (տպ. էջ 194—95) եւ որ անցած է նաեւ մեր Սովորական Պատարագին՝ կցելով նաեւ բուն պատարագի "Մուտք" (Introitus) մասն ալ, (տես հտծ. Բ.) թէեւ վերջինս մուտք չէր գտած Լամբրոնացւոյ քով։ Բաց աստի կը վկայէ Լամբրոնացի որ Փռանկաց եկեղեցական հանգամանք եւ գիրք անծանօթ էին Հայոց իւր ժամանակէն յառաջ։ Ահա իւր խօսքը.[1] "Բայց որ Հռոմայեցւոցն էր ազգ եւ եկեղեցի, կոչեցեալն այժմ Փռանգք, յաւուրսն առաջինսն բացակայ էլով ի մէնջ՝ վիճակաւ եւ աշխարհաւ, կործանել զինչ նոցին կարգացն հաստատեալ եւ տեղեկացեալ է նախնեացն։ Բայց թէ այժմ զօրացաւ բազում նոցա եւ տիրեցին այսմ աշխարհի, ընդ նոսա մեր ունելով զաստուածայնութիւն իւրեանց եւ զքաղաքավարութիւն հրահանգեալ եկեղեցւոյ գերազանց յօրինեաց, ընդ որս եւ մերոցս կարգաց գտանեմ իւիք իւիք համեմատութիւն, թէպէտ եւ ոչ զբովանդակն" եւն։ Փռանգաց պատարագը կը յիշէ քիչ մ'եւս ալ գրելով[2] թէ "Բայց Փռանկացն կարճառօտ է քան զնոցայն (Հոռոմոցն), եւ կարի համեմատ մերումս. քանզի նոքա յետ աւետարանին երգեն զխոստովանութիւն հաւատոյն, ըստ որում եւ մերս է սովորութիւն։ Նա զի եւ փռանգ մի երէց ի ժամուն պատարագէ երկու պաշտօնէիւք՝ սարկաւագաւ եւ կիսասարկաւագաւ. եւ կացեալ ի խորհրդեանն՝ տարածեալ ունի զձեռն" եւն։ Լամբրոնացւոյ հոս յիշածն է "Ըէ—" կոչուած պատարագն, որ արդէն քիչ շատ սովորական ըլլալու էր Հայոց մէջ ալ. որով "համեմատութիւն" կը գտնէր Լամբրոնացի Փռանգաց եւ Հայոց պատարագին մէջ։ Միւս կողմանէ կը ցուցընէ այս խօսքն որ իւր յիշած հայերէն թարգմանութիւնը լիակատար էր քան յաջորդ բնագիրն (ըստ M ձեռագրի.) ուր ընթերցմանց եւ հանգանակի մասին յիշատակութիւն մը չկայ։ Բայց աստի M ձեռագիրը շատ կարեւոր մաս մը չունի, այն է նուիրագործութիւնն (տես ծան. 31,) որ չէր կրնար պակսած ըլլալ "փռանգ" սկզբնագրին եւ ոչ ալ Լամբրոնացւոյ թարգմանութեան մէջ։ Հոս յանցանքը Մխիթարեանց օրինակի գրչին է։ Լիոնեանն այստեղերն մեզի անծանօթ ըլլալով՝ չենք կրնար դատաստան ընել անոր մասին։

Յաջորդն ըստ այսմ թարգմանութիւն է այն "Ռոսըն" (մի միակ) պատարագին Փռանկաց, ինչպէս կը գործածուէր Հայոց դրացի Փռանգներէն, որոնց քով կ'երեւայ թէ ըստ այսմ Միսալի միօրինակութիւն մը կը տիրէր արդէն Լամբրոնացւոյ ժամանակ։ Անշուշտ Լամբրոնացւոյ անծանօթ չէին Լատինացւոց պատարագի բազմաթիւ "աւուր պատշաճք" կամ իւրաքանչիւր տօնի եւ աւուր պատարագի յատուկ մասերն եւ աղօթքներն, որով այս "միակ" պատարագն շատ մեծ պէսպիսութիւն ունի՝ որմէ զուրկ է Բիւզանդեանն ու Հայկականն։ Անծանօթ չէին ասոնք ապահովապէս. եւ արդէն թարգմանիչն ինքնին պէտք տեսած է այսպիսի քանի մ'աղօթք թարգմանել եւ դնել յաջորդ պատարագին մէջ. (տես Հտծ. Ն. դարձեալ ծան. 16, 18 եւն։) Ասկէ զատ գրեթէ բոլոր "բրէֆացք" թարգմանուած կան Լիոնեան օրինակին մէջ (տես ծան. 27։) Թարգմանչին ըսածն այն է որ "հասարակ պատարագն" ընդհանրապէս մէկ հատ

[1] Անդ, էջ 183։

[2] Անդ, էջ 189։

*է Լատինացւոց քով, որուն միայն այլեւայլ՝ թէեւ բազմաթիւ՝ մասերն յատուկ օրերու համեմատ կը փոխուէին, հիմը՝ մանաւանդ Կանոնն՝ միշտ նոյն ըլլալով, եւ ոչ օրինակի համար Բիւզանդեանց պէս երեք տարբեր պատարագ՝ այլեւայլ օրերու համեմատ մատուցանելի։*

*Միւս կողմանէ թարգմանչին կրնային անծանօթ ըլլալ, եւ հաւանականօրէն անծանօթ ալ էին, լատինական բազմաթիւ իրարմէ բաւական տարբերող հնագոյն Միսալներն,* Ordines romani *կոչուածներն, գուցէ նաեւ Ամբրոսեանն, Մոզարաբեանն եւն։ Լատինական պէսպէս* Sacramentarium*ներուն (— այսպէս կ՚անուանուէին Պատարագամատոյցք եւ ուրիշ խորհրդոց մատակարարութեան կարգաց մատեանք, —) բազմաթիւ հրատարակութիւնք եւ քննութիւնք եղած են, ամէնէն լիակատարն Մուրատորի գրքին մէջ,*[1] *ուր առնուած են* Sacramentarium Leonianum *Լեւոնի Ա. քահանայապետի տրուած (տե՛ս* Migne, *Շար. Լատ., ԾԵ, էջ* 21 *եւն),* Sacramentarium Gelasianum *(տե՛ս* Migne, *ՀԴ, էջ* 1048 *եւն),* Sacramentarium Gregorianum *(տե՛ս* Migne, *ՀԸ եւն։) Ասոնք ի հարկէ շատ յաճախ լոյս տեսած են, ինչպէս նաեւ* Ambrosianum, *նոյնպէս* Missale Gothicum, Missale Francorum, Missale Gallicanum vetus *եւն։ Մանաւանդ բուն Փռանգաց պէսպէս հին Միսալներն լոյս տեսած են. նոյնպէս հին իռլանտականն, եւն։*[2] *Այսպիսի հրատարակութիւնք եւ գրութիւնք այնչափ բազմաթիւ են, որ մի առ մի յիշեալ հոս անկարելի է,*[3] *եթէ չենք ուզեր այս համառօտ Ազդումն տասնապատկել ծաւալով։ Նորագոյն գրութեանց մէջ յիշենք միայն Թալհոֆէր գերմանացւոյն*[4] *նշանաւոր գործքն, ուր Լատինական պաշտաման գրոց մասին ամէն խնդիրք, իւրաքանչիւր ծիսական սովորութեան հնութիւնն ու հետզհետէ զարգացումն եւն մի առ մի քննուած ու պարզուած են։*

*Յաջորդ բնագրին ծանօթութեանց մէջ մեր նպատակէն դուրս էր այս ամէն հին Միսալներուն զանազանութիւնքն, որոնցմէ ոմանք իրարմէ յանչափս կը շեղին մանաւանդ առաջին մասին մէջ, նշանակել։ Սակայն որովհետեւ բնական է որ Լամբրոնացւոյ ժամանակի թարգմանուած հայերէնս մեծաւ մասամբ շեղէր այժմու լատինական Միսալէն եւ միաբանէր հին Միսալներու այս կամ այն ձեւին հետ, այսպիսի տեղերը նշանակած ենք ծանօթութեանց մէջ, յառաջ*

---

[1] Lud. Muratori, Liturgia romana vetus, Վենետ. 1748, Հատ. Ա—Բ, եւ Նէապոլիս 1776։

[2] Տես Mabillon, de liturgia gallicana libri tres, Փարիզ 1685 (տե՛ս Migne, Լատ., Հատ. ՀԲ.) իւր Museum italicum եւն, Փարիզ 1687—1689, Հատ. Ա—Բ, ուր Հատ. Բ. ունի 15 հատ Ordines romani, իսկ Հատ. Ա ունի Ը. դարէն գաղղիական Միսալ մը։ F. G. Mone, Հրատարակեց 11 գաղղիական պատարագներ, Ֆրանքֆուրդ 1850 (տե՛ս Migne, Լատ., Հատ. ՃԼԸ, էջ 863—882։) Իռլանտականն՝ Հրտ. Warren, Stowe Missal, Լոնտոն 1881 (Թ. դարէն) եւ Irish Missale, Լոնտ. 1879 (ԺԲ դարէն.) եւ բազմաթիւ նմաններ։

[3] Հմմտ. ի միջի անթիւ այլոց՝ Hugo Menard, divi Gregorii papae I Liber Sacramentarum եւն, Փարիզ 1642։ J. M. Thomasius, Sacramentarium Gelasianum, Հռոմ 1680, որուն հետ նաեւ Missale gothicum, Francorum et Gallicanum vetus, եւ ուրիշ նման գործքեր։ Martin Gerbert, Vetus liturgia alemannica եւ Monumenta veteris liturgiae alemannicae (4 հատորք 1776—79ին.) եւն եւն։ Վերջապէս նաեւ Daniel իւր յաճախ յիշուած Cod. liturg. գործքին Ա հատորին մէջ առած է Գելասեան, Գրիգորեան, Գոթական, Ամբրոսեան, Մոզարաբական եւ Գաղղիական Միսալները։

[4] V. Thalhofer, Handbuch der katholischen Liturgik. Ֆրայպուրգ 1887—93, 8°, Հատ. Ա էջք 917. Հատ. Բ՝ էջք 564։ Նման գործքեր շատ բազմաթիւ են։

*բերելով կամ միայն նշանակելով* Martene *գիտնականին նշանաւոր գործքին էջերն, ուր համապատասխանող բնագիր մը կը գտնուի։*[1] *Համեմատութիւնքս որչափ կարելի է համառօտ ընել դիտած ենք, միայն էականները զանց չընելով, առանց բազմաթիւ մանրամասնութեանց իջնալու՝ բայց միայն ուր որ պէտք երեւեցաւ։*

---

[1] Edmund Martene, de antiquis ecclesiae ritibus, Ռուէն 1700—1702, դարձեալ Լիոն 1706, եւ իւր նման նիւթոց մասին գրութիւնքն ալ ի միասին՝ Վենետիկ 1783, միածալ չորս հատոր (Հատ. Ա, 1°, էջք 355. Հատ. Բ՝ էջք 411 եւն։) Վերջինս կը յիշենք մենք։

## Բ.

## ԲՆԱԳԻՐ ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ

*ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ ԱՍՏՈՒԾՈՎ ՈՐՈՎ ԿԱՏԱՐԻ ԽՈՐՀՈՒՐԴՆ ՅԱՄԵՆԱՅՆ ԱՒՐ. ԶԻ ԱՅՍ ՄԻԱՅՆ Է ԵՒ ԱՅԼ ՈՉ ԳՈՅ ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑՆ ԽՈՐՀՈՒՐԴ ՊԱՏԱՐԱԳԻ*[1]

## Ա. ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ[2]

Ը. — *Յորժամ հանդերձեալ է զգեստաւորիլ՝ այսպէս արասցէ. եթէ եպիսկոպոս է կամ քահանայ՝ ի զգենուլն զհանդերձն ասասցէ.* Զգեցո Տէր ինձ զհանդերձ փրկութեան եւ պատմուճան ուրախութեան. եւ շուրջ պատեցո[3] զզգեստուս փրկութեան, շնորհաւք Տեառն մերոյ։

*Գաւտի ածէ.*[4] Շուրջ պատեսցէ կամար հաւատոյ զմէջս սրտի իմոյ եւ զմտաց. եւ շիջուսցէ ի սմանէ զխորհուրդս աղտեղիս. եւ զաւրութիւն շնորհաց քոց յամենայն ժամ բնակեսցէ ի սոսա, շնորհաւք Տեառն մերոյ։

Այս բնագիրը միայն Միւնհէնի օրինակին համեմատ հրատարակուած է հոս (տես վերն՝ էջ 85, § 6), չունենալով առձեռնիս Լիոնի օրինակն (տես վերն՝ էջ 83, § 11), բայց միայն առաջին Զգեստաւորման մասն։ Ուր ուղղել պէտք տեսանք՝ դրած ենք հոս Միւնհէնի օրինակին ընթերցումը M համառօտութեամբ. (L՝ Լիոնինը։) Ուղղագրութիւնն օրինակին համեմատ է, միայն M ձեռագրին ոյ հրամայականք պահուած չեն։ Խորագիրը (Պատրաստութիւն, Աղօթք Զգեստաւորման եւն) եւ Ա, Բ, Գ եւն բաժանմունք մերն են։

ՀՐՑՐ.

‖1 Խորագիր։ L "... յամենայն օր. զի այս միայն է, եւ ոչ ֆոյ (չէք "այլն") Հռոմեյեցւոց" եւն։

Ա. ‖5 L "այսպէս ասասցէ, եթէ եպիսկոպոս ... ի զգենուլ" եւն, ունենալով խօսքին վերջն ալ դարձեալ "արասցէ" Mի հետ։ ‖8 L "Գաւտ[ի]ածն. Շուրջ պատեսցէ" եւն։ — M "Զմէջ սրտի." պէտք է կարդալ՝ "զմէջս սրտի եւ"

[1] Խորագրիս մասին տես վերն Ազդման մէջ։

[2] Այս Praeparatio ad Missam մասն անցած է առկէ մեր սովորականին ալ։ Նոյնն ունի արդէն Լամբրոնեանն մինչ. այս տեղւոյ եղածին համեմատ (տես տպ. Վենետ. 1847, էջ 194.) մինչ սովորականն (զոր օր. տպ. Վիեննա 1858, էջ 7—8) յայնմ կը շեղի որ "Խոյր" դնելու աղօթքն ամէնէն յառաջ դրած է եւ չունի այս մասն "եպիսկոպոսի" յատկացընող խրատագիրն՝ մինչ. այժմու լատինականին պէս, ուր ad Amictum աղօթքն է կամ "վարշամակի։" Այժմու լատինականն երկու ձեւով ունի Զգեստաւորման աղօթքս՝ մին պարզ քահանայի, միւսն եպիսկոպոսի համար։ Հնագոյն ձեւերն՝ որ հայերէնին աւելի մերձաւոր են, տես ի գիրս Edm. Martene, I. 126—28, եւ այլուր։

[3] "Շուրջ պատեցո" անյարմար առութիւն մըն է։ Լամբրոնեանն եւ Սովորականն ունին՝ "շուրջ պատեա զզգեստովս" եւն։ Հին Պատարագամատուցաց մէջ (տես Martene, I, 127) է աղօթքս ad albam այսպէս՝ Iudue me, Domine, vestimento salutis, tunica justitiae, et indumento laetitiae circumda me ("շուրջ պատեցո") semper եւն։ Այժմու լատինականին մէջ եպիսկոպոսի զգեստաւորման ad Dalmaticam աղօթքն եղած է։

[4] Լատ. ad Cingulum, որ հնոց քով յաջորդ կամ նման ձեւով է՝ Praecinge me, Domine, cingulo fidei et virtute castitatis lumbos

*Ապա դարձեալ պատարագիչ քահանայն ասէ.*[14] Ազատեսցէ եւ զձեզ Աստուած եւ թողցէ զամենայն յանցանս ձեր. տացէ ժամանակ ապաշխարելոյ եւ գործելոյ զբարիս. ուղղեսցէ եւ զառաջակայ կեանս ձեր, շնորհաւք սուրբ Հոգւոյն՝ հզաւրն եւ ողորմածն. եւ նմա փառք: *Եւ ասեն զԱմէնն:*

*Եւ դարձեալ քահանայն աղաւթէ.*[15] Աստուած որ ես սուրբ եւ կամիս զսրբութիւն, մաքրեա զիս Աստուած, որ յանմաքրից սրբես եւ ի մեղաւորաց արդարացուցանես եւ զաղտեղեալսն մաքրես, սրբեա զմիտս իմ եւ զմարմին յամենայն աղտեղութենէ մեղաց. եւ կացո զիս մաքրութեամբ պաշտաւնեայ քո սուրբ սեղանոյս. եւ զընծայս քո ճշմարիտ զոր մատուցանեմ քեզ վասն իմ եւ վասն ամենայն հաւատացելոց ի քեզ, ընկալ բարերար. եւ կատարեա զհայցուածս մեր, եւ եղիցի սա առաջնորդ մեզ ի յաւիտենական կեանսդ, շնորհաւք Տեառն մերոյ:

Գ. — *Աղաւթք խնկին.*[16] Տէր մեր, աւրհնեա զխունկս զայս, եւ ընկալ ի հոտ անուշից շնորհաւք Տեառն մերոյ:

*Այլ աղաւթք խնկի.* Խունկս աւրհնեալ ի քէն, Տէր, արծարծեսցի առաջի քո ի հոտ անուշից. եւ գթութիւն քո իջցէ առ. մեզ շնորհաւք Տեառն մերոյ:

---

‖[13] Այստեղ L բոլորովին ուրիշ կ'երեւայ: Հ. Ց. Գաթրճեան կը նշանակէ թէ "Ազատեսցէ եւ զձեզ" եւն արձակմանէն ետքը կը կցէ L՝ "Ես յետ այսորիկ տացէ յառաջնորդութիւն աստուածային խորհրդոյն: Աղօթք սորին. Աստուած որ միշտ զարմանալիս գործես" եւն: Ըստ այսմ բոլորովին տարբեր M ձեռագրին ունեցածէն: Դժբախտաբար անկէ սկսեալ L ի ընթերցուածք մեզի ծանօթ չեն՝ չունենալով ընդօրինակուած: ‖[16] M պաշտաւնեա:

եւն ձեւն ալ աղաւաղութիւն չէ. նոյնպէս կան հնագոյն լատինականք ալ՝ Misereatur vestri omnipotens Deus եւն (տես Martene, I, 130, 172 եւն:) Այժմու լատինականն երկու ձեւն ալ զատ զատ ունի:

[14] Ասոր աղբիւրն է լատինականաց՝ Indulgentiam, absolutionem et remissionem peccatorum vestrorum (այժմ nostrorum), cum emendatione morum (այժմու լատինականը չունի) et vitae... tribuat vobis (այժմու nobis) omnipotens et misericors Dominus. Աւելորդ է ըսել որ այս եւ ընդհանրապէս ամէն յաջորդքն ալ շատ պէսպէս են այլեւայլ հնութեամբ եւ այլեւայլ գաւառաց հին Միսալներու մէջ:

[15] Այս աղօթքին տեղ արդի լատիներէնն ունի ուրիշ կարճ աղօթք մը՝ "Բարձ ի մէնջ, խնդրեմք Տէր, զանօրէնութիւնս մեր" եւն (Aufer a nobis, etc.) Քիչ շատ տարբերութեամբ կայ սակայն հայերէնին աղօթքն ալ հին Միսալներու ոմանց մէջ, զոր օրինակ Ordo VII Պատարագամատոյցին (Martene, I, 193) մէջ, ուր կը սկսի՝ Deus qui de indignis dignos facis, de peccatoribus justos, de immundis mundos, munda cor meum et corpus meum ab omni agitatione et sorde peccati, եւն եւն: Լատինականն աւելի ընդարձակ է քան հայերէնը:

[16] Այժմու Լատինականը յայտնապէս կ'առաջարկէ որ հոս խնկելու ատեն բան մը պիտի չըսուի, սակայն այս կրկին խնկման աղօթքն եւ կից Սաղմոսի տունն չկան հոն: Հին Միսալներէն ունին ի հարկէ նաեւ հոս Oratio ad incensum (զոր օր. Martene, I, 194 եւն. հայերէնին քիչ մը նման Ordo XIII Միսալին մէջն եղածն՝ անդ, I, 197.) Ընծայման ժամանակ նաեւ այժմու Լատինականն ունի "Այլ աղաւթք խնկի" ըսուածն բառ առ բառ՝ Incensum istud a te benedictum եւն: — Հայերէնին մէջ կը պակսին հոս ոչ միայն "Կիւրիէ էլէյսոն" եւ "Փառք ի բարձունս" (Gloria) (որ նշխեցելոց պատարագի մէջ զանց կ'առնուի), այլ նաեւ որեւէ խրատագիր կամ ակնարկութիւն Ընթերցուածոյ, Աւետարանի եւ Հաւատամքի մասին: Այս թերութիւնը գրչէն

*Սաղմոս.* Ուղղեսցի աղօթք իմ, որպէս խունկ առաջի քո Տէր։

Դ. — *Աղաւթք յորժամ զընծայսն դնէ ի վերայ սեղանոյն.*[17] Սուրբ Երրորդութիւն ընկալ զպատարագս ընծայեալ քեզ ի յիշատակ մարմնացելոյ Բանիդ ծննդեան եւ չարչարանաց եւ յարութեան եւ համբառնալոյ յերկինս. եւ յիշատակ երանելւոյն Մարիամու միշտ կուսի, եւ ամենայն սրբոց՝ որք հաճոյ եղեն քեզ ի սկզբանէ աշխարհիս, եւ որոց նշխարք ոսկերաց հանգուցեալ են աստ, եւ ամենեցուն՝ որոց զտաւնս կատարեմք, եւ ի փրկութիւն մեր. եւ նոցա մաղթանքն ընդունելի լիցին քեզ յերկինս, որոց մեք կատարեմք յիշատակ յերկրի։

*Ննջեցելոց.* Սուրբ Երրորդութիւն ընկալ զպատարագս վասն հոգւոյ ծառային քո *այս անուան*, եւ վասն հոգւոց ամենեցուն հաւատով ի քեզ ննջեցելոց. զի արժանի լիցին մասին վիճակի սրբոց ի լոյս յաւիտենական կենացդ։[18]

*Յորժամ դնէ ի վայր զբաժակն.*[19] Աղաչեմք զքեզ, որպէս զպատարագեալս քեզ հաց, զի լիցի մարմին Տեառն մերոյ Յիսուսի, եւ զբաժակս՝ զի լիցի սա արիւն ի մեզ։

*Դառնայ առ ժողովուրդն եւ ասէ.*[20] Եղբարք, աղաչեցէք զԱստուած զի լիցի պատարագեալս ի ձէնջ կատարեալ յամենակարողէն Աստուծոյ առաջի երեսաց իւրոց։ *Եւ ապա ասէ զՍքրեթն:*[21]

---

Դ. ‖60 M "եւ յիշատակ երանելւոյդ Մարիամու" եւն։ ‖70 M "եւ բաժակս զի լիցի" եւն։ ‖74 M "եւ ապա ասէ զՍէքրէթն։"

ըլլալու է, ինչպէս պիտի տեսնենք քիչ մ՚ետքն շատ աւելի մեծ թերթյթ մը կարեւոր մասին Պատարագին։ Լամբրոնացի, որ հաւանականօրէն թարգմանիչն է այս խորհրդածութեանցն կամ գոնէ հեռի չէ ժամանակաւ թարգմանչէն, յայտնապէս կը յիշէ հոս պակասը գրելով (Մատենագրութիւնք, Վենետ. 1847, էջ 189) "Բայց Փռանկացն կարճառօտ է քան զնոցայն եւ կարի համառօտ մերումս. քանզի նոքա յետ Աւետարանին երգեն զխոստովանութիւն հաւատոյն, ըստ որում եւ մերս է սովորութիւնն" եւն։

Դ. [17] Լատ. Suscipe, sancta Trinitas, hanc oblationem եւն, որ այժմու Լատինականին մէջ Ննջեցելոց Պատարագի սահմանուած է։ Այս աղօթքին բազմաթիւ ձեւերը տես ի միջի այլոց Martene, I, 183 եւ այլուր, ուր հայերէնին հետ բոլորովին նոյն է generalis կոչուած ձեւը կամ սովորական օրերունը։

[18] Martene, I, 183 եւ այլուր, Pro defuncto ձեւը, բոլորովին նոյն, այսպէս՝ Suscipe, sancta Trinitas, hanc oblationem, quam tibi offero pro anima famuli tui N. ut per hoc salutare sacrificium purgata sanctorum tuorum consortio coadunari mereatur.

[19] Հմմտ. հետեւեալ ձեւը (տե՛ս Martene, I, 184) Posito calice super altare (ճիշդ ըստ Հ "յորժամ դնէ ի վայր զբաժակն"), dicat sacerdos; Oblatum tibi Domine calicem sanctifica, ut nobis unigeniti tui D. N. Jesu Christi sanguis fiat. Qui tecum, etc. Ըստ այսմ հոս Հացի համար մաղթանաց մասը չկայ, այլ միայն բաժակինը։ Հացին համար ալ ունին Միսալք նոյն ոճով յատուկ մաղթանք (տես անդ), ի միջի այլոց՝ Sanctifica Domine hanc oblationem, ut nobis unigeniti Filii tui D. N. J. Chr. corpus fiat.

[20] Այժմու Լատինականն՝ Orate fratres, ut meum ac vestrum sacrificium acceptabile fiat apud Deum Patrem omnipotentem. Ըստ այսմ "ընդունելի եղիցի" կ՚ըսէ հոս Լատինականն, որուն տեղն է հայերէնին "կատարեալ։" Նաեւ խորագիրն "դառնայ առ ժողովուրդն" կայ լատինականին մէջ՝ et versus ad populum. Հին Միսալ մը՝ se convertat ad circumstantes (տես Martene, I, 184 եւն։)

[21] Հմմտ. Նաեւ այժմու Լատինականին խորագիրն այստեղ՝ subjungit Orationes secretas (կցէ «ծածուկ աղօթս», ըստ Թարգմանչին "զՍէքրէթն։")

Ե. — Բայց պարտ է գիտել, զի ի շաբաթ աւուրն Զատկին մեծի աւեն զՂեւտանիայն, եւ առնեն Մկրտութիւն. եւ յաւելուն այլ աղաւթանի յայսմ տեղւոջ, ի խորհուրդ Պասքային եւ նորա կնքացն:[22]

Աղաւթք ի վերայ Երախայից.[23] Ամենակալաւղ յաւիտենական Աստուած, միայն յոյս աշխարհի, որ մարգարէիցն քոց կոչմամբ՝ զներկայ ժամանակացս յայտնեցեր զխորհուրդ: Արդ հաճեաց յաւելուլ զուխտ ժողովրդեան քոյ: Վասն զի հաւատացելոց քոց ոչինչ լինի աճումն զաւրութեանց, եթէ ոչ ի փչմանէ շնորհաց քոց. վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ընդ քեզ կենդանի է եւ թագաւորէ միութեամբ Հոգւոյդ սրբոյ, Աստուած ամենայնիւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

Աղաւթք զոր քահանայն ասէ առ Աւազանն.[24] Ամենակալաւղ յաւիտենական Աստուած, հայեաց քաւութեամբ ի սէր ժողովրդեան վերստին ծնելոց. զի որպէս եղջերու զաղբեւր ջուրց խնդրէ, շնորհեա քաւիչ զի ծարաւ հաւատոց սորա՝ մկրտութեանն խորհրդով զհոգի եւ զմարմին սրբեսցէ. վասն Տեառն մերոյ Յիսուսի:

Աղաւթք զոր քահանայն ասէ ընդ մկրտելն.[25] Աստուած որ զգիշերս զայս սուրբ փառաւք տէրական յարութեամբն լուսաւորես, պահեա եւ նորոգեա զծառայից քոց անդրանկաց զհոգի որդեգրութեան՝ զոր ետուր. զի մարմնովք եւ մտաւք նորոգեալք զմաքուր ծառայութիւն մատուցանեն քեզ ընդ նմին միութեամբ Հոգւոյդ սրբոյ Աստուած ամենայնիւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

---

Ե. ‖76 M “զՂեւտանիայն:” ‖94 M “զի մարմնովք եւ մտաւք” եւն:

Ե. [22] Ինչպէս այս խրատագիրը կը ցուցնէ յաջորդ երեք աղօթքներն ալ (Հմմ. Ե) հռոմէական պատարագի մաս չեն, այլ՝ ըսենք՝ “աւուր պատշաճից” կարգէն, ինչպէս լատինական եկեղեցին տարւոյ իւրաքանչիւր օրուան պատարագաց համար ունի սահմանուած բազմաթիւ աղօթքներ եւն: Արդեամբք ալ այս տեղ դրուած երեքն աղօթքն ալ Աւագ Շաբաթու աւուր պատշաճից կտորներ են. (տես առ. Վիեննա 1828, p. 171, 172, եւ 179, եւ այլուր:)

[23] Այս աղօթքը կը գտնուի այժմու Միսալին մէջ Աւագ Շաբաթ օրուան Ճրագի օրհնութենէ ետքն եկող ԺԲ մարգարէութեան ընթերցուածոց ծայրը, այսպէս՝ Omnipotens sempiterne Deus, spes unica mundi, qui Prophetarum tuorum praeconio, praesentium temporum declarasti mysteria: auge populi tui vota placatus; quia in nullo fidelium, nisi ex tua inspiratione, proveniunt quarumlibet incrementa virtutum. Per Dominum nostrum. Ըստ այսմ բառ առ բառ. (“ի փչմանէ” = inspiratione եւ նմաններ, զոր դիւրին է համեմատելով նշմարել:)

[24] Առաջին աղօթքն է նոյն աւուր “Օրհնութիւն Աւազանի” կարգին, որ այժմու Միսալին մէջն է այսպէս՝ Omnipotens sempiterne Deus, respice propitius ad devotionem populi renascentis, qui, sicut cervus, aquarum tuarum expetit fontem, et concede propitius, ut fidei ipsius sitis baptismatis mysterio animam corpusque sanctificet. Per Dominum nostrum etc. Միայն դրուած հայերէնին այսպիսով թարգմանութեան՝ “հայեաց քաւութեամբ” եւ քիչ մ'եւսքը՝ “շնորհեա, քաւիչ.” երկու տեղն ալ լատիներէնը propitius (հաշտութեամբ, մարդասիրութեամբ, յօժարականութեամբ եւն) մակբայը կը գործածէ, որուն արմատը կամ բայը եւ ածանցմունք ի հարկէ եկեղեցական լեզուի մէջ նաեւ “քաւել” եւն կը թարգմանուին:

[25] Աս ալ նոյն օրուան պատարագի յատուկ աղօթքներէն է՝ այժմու Միսալին մէջ ճիշդ առաքելական թղթոյն (կոլլ.) ընթերցմանէն յառաջ՝ Deus qui hanc sacratissimam noctem gloria Dominicae resurrectionis illustras (Հ “լուսաւորես”), conserva in nova familiae tuae pro-

Զ. — Ապա հասարակաց պատարագին խորհուրդ վերոյգրեալդ է. որ զկնի Սարկաւագն. Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր աստուածային երկիւղիւ։ — Ժողովուրդն. Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ։ — Սարկաւագն. Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ։ — Ժողովուրդն. Արժան եւ իրաւ։[26]

Քահանայն.[27] Արժան եւ իրաւ եւ ճշմարտապէս զքեն, ճշմարիտ եւ արդար փրկիչ, յամենայն ժամ գոհանալ եւ յամենայն տեղիս, սուրբ ամենակարող Հայր յաւիտենական Աստուած, վասն Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ։ Զի քո սուրբ պատկերիդ առաջի կան հրեշտակք, եւ հրեշտակապետք փառաւորեն զքո էութիւնդ. երկիր պագանեն քեզ իշխանութիւնք. եւ վերապատուեն զքեզ ամենայն զաւրութիւնք. եւ դողան ի քէն ամենայն պետութիւնք երկնաւորաց որք յերկինս. եւ երանելի սերովբէք զուարթունք վերաւրհնեն զքեզ։ Ընդ որս աղաչեմք զի եւ մեզ տացես իշխանութիւն համարձակաձայն բարբառով երգել եւ ասել։

Զ. ‖105—106 M "երկրպագեն քեզ իշխանութիւնք, եւ վերայպատուեն զքեզ ամենայն զաւրութիւնք„ եւն։ ‖107 M "սերովբէք։„

genie adoptionis spiritum, quem dedisti; ut corpore et mente renovati, puram tibi exhibeant servitutem. Per eumdem Dominum nostrum, etc.

Զ. 26 Այս հատուածով դարձեալ կը շարունակուի հասարակաց պատարագը։ Հոս գրուածներն "ի վեր ընծայեցուցէք„ եւն մեր պատարագին համեմատ գրուած են՝ թերեւս նաեւ թարգմանչէն, քանի որ նաեւ Լատինականն նոյնն է՝ միայն աւելի կարճ, այսպէս Sursum corda ("ի վեր զսիրտս.„) Պատ. Habemus ad Dominum ("Ունիմք առ Տէր.„) դարձեալ՝ Gratias agamus Domino Deo nostro (Գոհացարուք զՏեառնէ Աստուծոյ մերմէ.) Պատ. Dignum et justum est ("Արժան եւ իրաւ։„)

27 Այս աղօթքն է Լատինական պատարագի Praefatio, կամ Նախերգանն, զոր այժմու Միսալը կը սահմանէ ըսել բոլոր տարւոյն այն աւն եւ լուր օրերն՝ որ յատուկ "Պրեֆացի„ չունի, ինչպէս նաեւ Ննջեցելոց պատարագի մէջ. (տես օրգ. Վիեննա 1828, p. 215, եւ այլուր։) Տարբերութիւնք մէկ երկու հատ կան, բայց ընդհանրապէս աննշան։ Սակայն անյայտ է հոս եւ այլուր ըսել թարգմանչէն "վասն Յիսուսի Քրիստոսի„ եւն (լատ. per Christum Dominum, որ պէտք էր ըլլալ "Տէրոջ մերով Քրիստոսիւ„ եւն։) Աւելի աչքի կը զարնէ՝ "զի քո սուրբ դոմինե... առաջի կան հրեշտակք„ եւն, ուր լատիներէնն է՝ majestatem tuam laudant Angeli ("[illegible] քո գովեն Հրեշտակք„ եւն։) "Պատկեր„ այս իմաստով թարգմանուած կը գտնենք ուրիշ տեղ մ'ալ այս պատարագիս մէջ։ Հայերէնին յատուկ է նաեւ "փառաւորեն զքո էութիւնդ„ (լատ. "...զքեզ„), եւ նման մանր պէտպէսութիւնք։ — Ըսենք որ բազմաթիւ Praefationes կան այլեւայլ տօներու եւն համար սահմանուած։ Ասոնք ալ թարգմանուած են հայերէն եւ կան Լիոնեան ձեռագրի մէջ՝ որոնց մասին հետեւեալ տեղեկութիւնը կը գտնեմ Հ. Յովսեփեան թղթոց մէջ՝ "Գրքին (L ձեռագրին) երեք վերջին երեսը կը լեցունեն լատինական փրեֆացիոններու հայերէն թարգմանութիւնք, 7 թուով. գործքին ընթացքին մէջն ալ քանի մը հատ կայ։ Յիշուած 7 հատին առաջինին վրայ գրուած է "Պրեֆացիօ„, երկրորդին վրայ նոյնպէս կարմիր գրուած է "Բրեֆացիօ Յարութեան Քրիստոսի։„ Վերջինը սանկ է. "Ճշմարիտ եւ արժան եւ արդար է, որում եւ երկրպագեմ[ք] մեք քեզ միշտ եւ յամենայն զօրութենէ մերմէ, զքեզ աղաչեմք, Տէր սուրբ Հայր ամենակալ միշտ յաւիտենական Աստուած վասն Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, զու որ հովիւդ ես ...ւոր (— անընթեռնլի կիսատողերեւլքն. —) մ' թողուցուս զհաւա... ձեռն երանել եւ փառաւորել առաքելոց քոց զամենայն ՊՕ հանապազօր ուղղել պահեսցես. որպէս զի հօտ քո առաջնորդեալք ի պահպանութենէ հովուապետութեան սոցա՝ զոր առնել թողեր քեզ փոխանորդս գործոց քոց հովուել զխաշինս քո։ Որով ընդ հրեշտակս եւ ընդ հրեշտակապետս, ընդ զօրութիւնս եւ ընդ ամենայն բիւրս բիւրոց երկնաւոր ...մշանջենաւոր բարբառով ընդ նորին աղաղակել եւ ասել։„

*ժողովուրդն, Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր սաբաւովթ. լի են երկինք եւ երկիր փառաւք քո: Ովսաննայ ի բարձունս: Օրհնեալ որ եկիր եւ գալոց ես անուամբ Տեառն: Ովսաննայ ի բարձունս:*[28]

## Գ. ԿԱՆՈՆ ՊԱՏԱՐԱԳԻ[29]

Ա. — *Քահանայն աղաւթէ. Զքեզ գթած Հայր սուրբ, աղաչեմք եւ խնդրեմք ի ձեռն որդւոյ քո Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ. որպէս զի առեալ ընկալցիս զընծայս զայս, եւ աւրհնեսցես զսուրբ զայս նուէրս, զոր քեզ պատարագեմք, նախ վասն սուրբ կաթուղիկէ եկեղեցւոյ' զոր կամաւք քո խաղաղացուսցես եւ խնամեսցես, եւ ժողովեսցես ընդ հովանեաւ քո յամենայն երկրի միաբանեալ զծառայքս քո:*[30] *Եւ վասն հայրապետին մերոյ այս անուան, եւ եպիսկոպոսի մերոյ այս անուան:*

[Շարունակութիւնն եւ Նուիրագործութիւնը կը պակսի հոս, ինչ որ յետագ գիրը թերթը մը չէ ցուցներ. յաջորդն են Նոր Սերոբէն ետին եկող մասերը:][31]

Բ. — [32]*Յաղագս այսորիկ եւ մեք, Տէր, ծառայք քո եւ սուրբ այս ժողովուրդ, կատարեմք զյիշատակ այսմ իրի, եւ ընծայեմք առաջի քո յատակ երեւացդ զաւանդեալս մեզ յաւգնականութիւն այսոցիկ որք աստ են:*[33] *Եւ յիշատակեմք զմիածին Որդի քո զՏէր մեր Յիսուս Քրիստոս, եւ զբարի չարչարանսն իւր, եւ զկամաւոր խաչելութիւն, եւ զսուրբ յարութիւն իւր, զփառաւք համբառնալն յերկինս. եւ նուիրեմք քեզ զանբիծ զայս ընծայս, եւ զանաղտ, զմաքուր առաջադրութեան հացս յաւիտենական կենացն, եւ զբաժակս յաւիտենական փրկութեան. ի վերայ որոց նայեա բարերար յատակ*

---

Է. ‖116 M "զսուրբ զայս նուէրս" եւն: ‖121–22 Հոս' ինչպէս նշանակեցինք, մեծ թերթ մը կայ, ուր կը պակսի նաեւ սրբագործութեան մասը: Ձեռագիրը, գոնէ առջեւս եղած ընդօրինակութիւնը (Ձեռ. մեր Մատենադարանի' Թ. 268, Թղ. 93բ) չի ցուցըներ հոս պակաս ըլլալը: Լի կամ Լիոնեանի ընթերցումը չունինք, որմէ թերեւս կարելի էր լրացընել, եթէ հոն ալ այսպէս չէ:

[28] Ճիշդ լատինականին համեմատ. նոյնպէս մեր սովորական խորհրդատետրին մէջ:

Է. [29] Լատ. Canon Missae, որ ընդհանրապէս նոյն է բոլոր Միսալներուն մէջ: Լատինականին սկիզբն է' Te igitur, clementissime Pater, ...rogamus ac petimus եւն:

[30] "Եւ ժողովեսցես" եւն հայուն յատուկ է: Լատինականն adunare et regere digneris toto orbe terrarum ("միաւորեսցես եւ վարեսցես յամենայն աշխարհի:")

[31] Ինչպէս հոս նշանակած ենք, մեծ թերթ մը կայ' լատ. պատարագին ամենէն կարեւոր մասը: Անկարելի է կարծել որ թարգմանչին գործածած բնագրին մէջ չկար, ուստի ինքն ալ չէր թարգմանած. այլ պարզապէս M ձեռագրի կամ իւր գաղափարին մէջ հոս թուղթ մ'ինկած է: Դժբախտաբար L ձեռագրին այս անդրայ ընթերցման մասին տեղեկութիւնք չկրցանք ունենալ. չենք կարծեր որ հոն ալ պակսի այս մասը:

[32] Երկար պակասէն ետքը կը սկսի "Աւէք կերայք" ի անմիջապէս կցուող մասը' Unde et memores, Domine, nos servi tui, sed et plebs tua sancta եւն:

[33] Հայուն յատուկ է այս ձեւով, մանաւանդ "առաջի քո յարգոյ երեւոյթ" նորանշան բացատրութիւնն, ուր լատինականն է' offerimus praeclarae majestati tuae ("ընծայեմք փառաւոր վեհափառութեան քում" եւն:) Համեմատելու է վերը "պայծառ" թարգմանութիւնը, Ծան. 27:

դիմաւք.[34] եւ ընկալ զսոյն, գթութիւն,[35] որպէս ընկալար զպատարագ Աբելի մանկանն պատարագեցելոյ. որպէս ընկալար զպատարագ նահապետին Աբրահամու. ընկալ զսա որպէս ընկալար զպատարագ քահանային քո Մելքիսեդեկի, որ նախ քահանայագործեաց առաջի քո, Եւ եղիցի սա առ ի քէն սրբեալ եւ կատարեալ։

Աղաչեմք զքեզ, ամենակարող Տէր սուրբ, ընկալ զսա ի վերին քո սեղանդ յանդիման փառաց քո պատկերիդ[36] ի ձեռն մաքուր հրեշտակաց. եւ քանիցս անգամ մեք հաղորդիմք յայսմ սեղանոյ սուրբ մարմնոյ Քրիստոսի քո եւ պատուական արեան՝ լցցուք երկնային աւրհնութեանդ շնորհաւք ի ձեռն Միածնի քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Թ. — [37]Յիշեա Տէր զամենեսեան զծառայքս քո, որք հաւատով ննջեցին՝ զարս եւ զկանայս. եւ ամենեցուն այնոցիկ՝ որք հանգեան ի քուն խաղաղութեան ի Քրիստոս քո, տուր տեղի լուսոյ եւ տեղի հանգստեան,[38] ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Ամէն։

Եւ տացես մեզ մեղուցեալ ծառայիցս՝ որք յուսամք ի մեծ քո գթութիւնդ՝ բաժին եւ ժառանգութիւն ընդ սրբոց առաքելոցն եւ ընդ երանեալ վկայիցն, Յովհաննու, Ստեփանոսի, Մատաթեայ, Բառնաբայ, Իգնատիոսի, Աղեքսանդրոսի, Մարցելինու,[39] Պետրոսի, եւ կանանց՝ Ֆելիցիտատի, Պերպետուայ, Ագաթեայ, Լուցիայ, Անգնեզի, Ցեցիլեայ, Անաստասեայ, եւ ամենայն սրբոց քոց, վիճակ ժառանգութեան շնորհեսցես մեզ հանգչել ի վեր քան զարժանն մեր, վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Ամէն։

Եւ դու Տէր, տացես մեզ յամենայն ժամ եւ յամենայնի զայս բարութիւն զոր մաքրեցեր եւ կենդանացուցեր եւ աւրհնեցեր եւ փառաւորեցեր։

---

Ը. ‖[131] M "եւ ընկալ զսոյն գթութիւն, որպէս ընկալար" եւն։

Թ. ‖[147–49] M "...Մատաթիայ..., Իգնատիոսի, Աղէկսանդրոսի, Մարցելինու,... Ֆելեցիդատի, Պերպետուու, Ագաթեա, Լուցիայ, Աննեզի (փխ. "Անգնեզի," այսինքն Ագնէսի), Ցէցելիայ, Անաստասիայ, եւ յամենայն սրբոց քոց" եւն։

[34] Լատ. Supra quae propitio ac sereno vultu respicere digneris (Նայեա հաճոյ եւ զուարթ դիմաք)։

[35] "գթութիւն" չունի հոս Լատինականն, նոյնպէս յաջորդ նախադասութեանց մէջ "որ նախ քահանայագործեաց առաջի քո" խօսքը։

[36] Ինչպէս վերը (ծան. 27) ըսինք, հոս ալ նոյն իմաստով է "յանդիման փառաց քո պատկերիդ" խօսքը, ինչպէս կը ցուցնէ լատիներէնն ալ՝ in conspectu divinae majestatis tuae.

Թ. [37] Լատինականն սա խորագիրն ունի՝ Commemoratio pro defunctis (Յիշատակ վասն ննջեցելոց։) Արդարեւ ալ յաջորդներն յունական եւ մեր պատարագաց երկրորդ կամ ընդարձակ Յիշատակաց համապատասխանող աղօթքներն են։

[38] Այժմու Լատինական՝ locum refrigerii, lucis et pacis (տեղի հանգստեան, լուսոյ եւ խաղաղութեան)։

[39] Անուններս՝ ինչպէս շատ սովորական է հայ գրչաց, բաւական աղաւաղուած կը գտնուին M ձեռագրին, նոյնպէս ըլլալու են կարծենք նաեւ Լիոնեանի մէջ։ Որչափ ալ աղաւաղութիւններն ուղղենք՝ կը մնան սակայն մեր գրաւոր հնագոյն լեզուի համար խորթ ձեւեր։ Այսպէս՝ "Մարցելինու" (փխ. "Մարկեղինեայ," Marcellino), "Ֆելիցիտատի" (լատ. Felicitate), "Ցեցիլեայ" (լատ. Caecilia), "Լուցիայ" կամ "Լուցիայ" (լատ. Lucia).

*Ի ձայն.* [40] *Որով, եւ յինքն, եւ ընդ իւր, փառք եւ պատիւ քեզ, Աստուած ամենակալդ Հայր, ընդ Հոգւոյդ սրբոյ, այժմ: — Ժող. Ամէն:*

ԺԵ. — *Քահ. Աղաչեմք մեք. որք եմք ընդ հրամանաւ փրկութեան եւ կերպարանեալք ըստ սուրբ սահմանի՝ համարձակիմք եւ ասեմք.*[41]

*Հայր մեր որ յերկինս. սուրբ եղիցի անուն քո ի վերայ մեր:*[42] *Եկեսցէ արքայութիւն քո: Եղիցին կամք քո, որպէս յերկինս եւ յերկրի: Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այս աւր. Թող մեզ զպարտս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց. եւ մի տար զմեզ ի փորձութիւն:*[43] — *Ժող. Այլ փրկեա ի չարէ:*

*Քահանայն ապա ասէ ցած.*[44] *Տէր, աղաչեմք զքեզ, զերծո, փրկեա, եւ ազատեա զմեզ յամենայն չարէ, յանցելոյն եւ յայժմուս եւ որ գալոցն է. բարեխաւսութեամբ փառաւորեալ եւ միշտ կուսին Մարիամու մաւր Տեառն մերոյ. եւ վասն երանեալ առաքելոցն Պետրոսի, Պաւղոսի, Անդրէի եւ վասն ամենայն սրբոց քոց. եւ տուր բարերար ի ժամանակիս յայսմիկ զխաղաղութիւն պարգեւեաք զթութեան քո: Որպէս զի արձակեալք ի մեղաց եւ աներկիւղ մնացեալ յամենայն խռովութեանց սատանայի — ի ձայն — գոհութեամբ փառաւորեսցուք զքեզ հանդերձ միածին Որդւովդ եւ ազատիչ սուրբ Հոգւովդ, այժմ:*

*Քահ. Խաղաղութիւն Աստուծոյ եղիցի ընդ ձեզ: — Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում:*

ԺԶ. — *Համբուրէ քահանայ զսրբութիւնն, եւ սարկաւագն՝ զինքն. եւ սփռի համբոյրն ընդ ամենայն ժողովն:*[45] *Ու երգեն կղերիկոսքն.*[46] *Գառն Աստուծոյ, որ բարձեր զմեղս աշխարհի, ողորմեա մեզ: Գառն Աստուծոյ որ*

---

ԺԵ. ‖165 M "բարեխաւսութեամբ ... միշտ կուսիդ Մարիամու ... եւ վասն երանեալ առաքելոցդ" եւն. ‖167 M "ի ժամանակի յայսմիկ" եւն: ‖169 M նաեւ լուսանցքի վրայ կրկին անգամ ունի "ի ձ." (ի ձայն):

ԺԶ. ‖175 M "կլերիկոսքն:" ‖181 M "առհաւատչեա:"

բայց ամենէն աւելի "Ագնեսի" անուան "Աննիչէն" ըլլալը:

[40] Այսպէս է Լատիններէնին մէջ բանաձեւը՝ Per ipsum, et cum ipso, et in ipso, est tibi Deo Patri omnipotenti, in unitate (Հայն ալ յաճախ թարգմանած է "ընդ Հոգւոյդ սրբոյ" եւն) Spiritus sancti, omnis honor et gloria.

ԺԵ. [41] Լատինականն՝ Oremus (Հ "Աղաչեմք մեք.") Praeceptis salutaribus moniti (Հ "որք եմք ընդ հրամանաւ փրկութեան" ոչ այնչափ լաւ.), et divina institutione formati (Հ "կերպարանեալք ըստ սուրբ սահմանի."), audemus dicere.

[42] Այս "ի վերայ մեր" նաեւ այժմու լատինականին մէջ չկայ:

[43] "Մի տար զմեզ ի փորձութիւն" ըստ M ձեռագրի: Նաեւ լատ. ne nos inducas in tentationem (մի տանիր զմեզ ի փորձութիւն)

[44] Այժմու Լատինականն ալ հոս խորհրդատետր ունի՝ Sacerdos submissa voce dicit: Amen; — Այս աղօթքը, մանր ու աննշան տարբերութիւններ չհաշուելով, նոյն է լատինականին հետ:

ԺԶ. [45] Համբուրի խորհրդատետրս հոս նաեւ այժմու լատիններէնին մէջ, բայց քիչ մ'աւելի ետքը, այսինքն բաժակի խառնման եւ անոր կից Աղօթքէն ետքը, այժմ սա ձեւով Si danda est pax, osculatur altare, et dans pacem, dicit: Pax tecum եւն:

[46] Երգելու մասին խորհրդատետրս չունի այժմու լատինականն: "Գառն Աստուծոյ (Agnus Dei)

բարձեր զմեղս աշխարհի, ողորմեա մեզ։ Գառն Աստուծոյ տուր մեզ զխաղաղութիւն։

*Խառնէ զմարմինն եւ զարիւնն եւ ասէ.* Այս սուրբ խառնումն մարմնոյ եւ արեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի լիցի փրկութիւն հոգւոյ եւ մարմնոյ ամենեցուն՝ որ ճաշակեն զսա, եւ առհաւատչեայ յաւիտենական կենաց. Ամէն։[47]

ԺԲ. — *Ու յորժամ ճաշակէ.*[48] Տէր սուրբ, ամենակարող Հայր յաւիտենական Աստուած, արժանի արա զիս մաքրութեամբ ճաշակել զմարմին եւ զարիւն Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ. եւ սովաւ գտից զթողութիւն մեղաց իմոց. եւ լցայց Հոգւովդ սրբով։ Զի դու ես Աստուած եւ ոչ գոյ այլ Աստուած, բայց ի քէն. եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն։

[49] Տէր Յիսուս Քրիստոս, Որդի Աստուծոյ կենդանւոյ, որ կամաւոր մահուամբ քո կենդանացուցեր զաշխարհս, արձակեա զիս յամենայն պղծութենէ՝ մարմնովս քո եւ արեամբս, եւ պահեա զիս ի կարգ քոյին հրամանացդ. եւ պահեա անբաժանելի ի քեզ, որում վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ։

*Յետ կատարմանն՝ յորժամ գնալ կամի.*[50] Սուրբ Երրորդութիւն եւ մի Աստուածութիւն, որում զպաշտաւնս † կատարեցի, եղիցի [սա] ընդու-

ԺԲ. ‖190 M "ի կարգ քոյին" եւն։ ‖194—95 M "...եւ մի Աստուածութիւն, որոյ զպաշտաւնս † կատարեցի, եղիցի ընդունելի քեզ" եւն։

ալ ոչ հոս, այլ յաջորդ "Այս սուրբ խառնումն" եւն աղօթքէն ետքը կու գայ։

[47] Այժմու լատինականն է՝ Haec commixtio et consecratio Corporis et Sanguinis Domini nostri Jesu Christi, fiat accipientibus nobis in vitam aeternam. Amen. Հոս կը կցի Agnus Dei, որմէ ետքը դարձեալ Աղօթք մ'որ կը պակսի հայերէնին մէջ, այսինքն՝ "Տէր մեր Յիսուս Քրիստոս. որ ասացեր յառաքելոյն թէ Զխաղաղութիւն զիմ թողում ձեզ, զխաղաղութիւն զիմ տամ ձեզ. մի՛ հայիր ի մեղս մեր, այլ ի հաւատս եկեղեցւոյ քո, զոր խաղաղացուսցես եւ միաւորեսցես, որ կենդանի ես եւ թագաւորես" եւն։ Հոս կու գայ Համբուրի խրատագիրը։

[48] Այս աղօթքը չենք գտներ առնուած այժմու լատինականին հասարակաց պատարագի կանոնին մէջ. ուրիշ աղօթք մը, զոր չունէր հայը, տեսանք նախընթաց ծանօթութեան մէջ։ Սակայն Ճիշդ հայոյն ունեցած աղօթքը կայ Հնագոյն Միսալներուն մէջ, (տե՛ս Martene, I, 185) այսպէս՝ Domine sancte, Pater omnipotens, aeterne Deus, da mihi hoc Corpus et Sanguinem Filii tui ita sumere, ut per hoc merear remissionem omnium peccatorum, accipere, et tuo sancto Spiritu repleri; quia tu es Deus, et praeter te non est alius, cujus gloriosum nomen permanet in saecula saeculorum. Amen.

[49] Այս աղօթքը՝ քիչ տարբերութեամբ՝ կայ նաեւ այժմու Միսալին մէջ։ "Արձակեա զիս յամենայն պղծութենէ" հայոյն ընթերցուածին կը համապատասխանէ լատինականը՝ libera me ("ազատեա") per hoc sacrosanctum Corpus et Sanguinem tuum, ab omnibus iniquitatibus (յամենայն անօրէնութեանց) meis, et universis malis եւն։ "Պահեա զիս ի կարգ քոյին հրամանացդ" է ի Լատ.՝ et fac me tuis semper inhaerere mandatis եւն։ — Անկէ ետքը հայերէնը կ'երեւայ թէ փոքր թերոյթ մ'ունի. հոս կը պակսին մինչեւ անգամ ճաշակման բանաձեւերը, որ լատիներէնին մէջ այսպէս են՝ "Մարմին (յետոյ՝ Արիւն) Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պահեսցէ զհոգի իմ ի կեանս յաւիտենականս։" Երկու բանաձեւին հետ կան երկու փոքր աղօթքներ ալ, որ նոյնպէս կը պակսին հոս։ Վերջինքս հաւանօրէն չկային հայ թարգմանչին գործածած բնագրին մէջ. բայց ճաշակման բանաձեւը կար անշուշտ։

[50] Լատ. Placeat tibi, sancta Trinitas, ob-

195 նել քեզ, եւ մեզ ամենեցուն՝ որք մատուցաք զսա՝ ուժանդակ ի յաւիտենական կեանս: Եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն: Կատարեցաւ:[51]

---

sequium servitutis meae եւն՝ քանի մը փոքր տարբերութեամբք:

51 "Կատարեցաւ," ուստի առանց վերջին աւետարանի ընթերցման, զոր առած ենք մենք ալ Հռոմէականէն: Սակայն նաեւ լատինական հին Միսալներուն անծանօթ է այս. եւ Հռոմէականին համար պաշտօնապէս որոշուած ըլլած է Պիոս Ե., ուստի ԺԶ դարուն վերջին կէսէն, թէեւ նոյնն ունին արդէն նաեւ ԺԵ դարու տպուած Միսալները: Բնական էր որ մեր թարգմանչին գործածած բնագիրը տակաւին չէր գիտեր այս սովորութիւնը:

## Գ.

## ՄԻԱԲԱՆՈՂԱՑ ՄԻՍԱԼ

Հռովմայեցւոց պատարագի հետ անձուկ կապուած է Հայ Դոմինիկեանց գործածած Միսալը, որ լիակատար թարգմանութիւն է Լատին եկեղեցւոյ պատարագամատուցին, ոչ թէ միայն խորհրդատետրին՝ այլ նաեւ բովանդակ տարւոյ իւրաքանչիւր աւուր-պատշաճից: Ըստ այսմ չենք կրնար հոս անյիշատակ թողուլ այս Պատարագն ալ, գոնէ իբրեւ լրումն կամ յաւելուած նախընթաց Հռովմայեցւոց Միսալին, թէեւ ուշ ժամանակի կը վերաբերի՝ հազիւ 1333ին թարգմանուած ըլլալով առաջին անգամ եւ երկրորդ խմբագրութենէ մ'ետքն երրորդ անգամ սրբագրուած եւ տպուած ըլլալով 1728ին:

Միաբանող եղբարց կարգի հաստատութիւնը շատ մասերու մէջ նոր հոսանք մը բերաւ Հայոց:[1] Այս շարժումը, որ վերջ ի վերջոյ յանգեցաւ երկու կողմանէ ալ սաստիկ վէճերու եւ ծայրայեղութեանց, ոչ թէ պարզապէս կրօնական խնդրոց առիթ տուաւ, այլ նաեւ մեծ զարկ տուաւ գրականութեան՝ բազմաթիւ թարգմանածոյ գրութիւններով Արեւմտից գաղափարներն ընտելական ընելով Հայոց, նաեւ իրենց խիստ հակառակորդաց: Նոր շրջան մ'ալ բացուեցաւ Հայ լեզուի անկածութեան, որ հետ զհետէ որոշ կերպարանք առնելով՝ յանգեցաւ լատինաբանութեան այն ձեւով, ինչպէս դարեր յառաջ կար հելլենաբանութիւնը: Միաբանողաց ծայրայեղութեանց մին ալ եղաւ այն որ կրօնական համոզմանց խնդրին սերտ կերպով կապեցին ծիսի խնդիրները, որոնք բարեկարգութեան վերաբերելով՝ կրնային եւ պէտք էին ի հարկի, շատ տարբեր ըլլալ Արեւելից եկեղեցւոյ վերաբերող Հայոց քով մէկ կողմանէ եւ միւս կողմանէ Արեւմտեան եկեղեցւոյ մէջ: Արդէն Միաբանողաց 1330ի Քռնայ ժողովին մէջ[2] որոշուած էր պաշտօնապէս ընդունիլ “զկարգս եւ զգեստ սրբոյն Դոմինիկոսի„ եւ իրենց միաբանութեան անունը դնել “Կարգ եղբարց Միաբանողաց Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի:„ Քիչ մ'ետքն ալ պաշտօնապէս սկսաւ ծիսի փոփոխութիւնն՝ ընդունելով լատինականն բայց պահելով հայերէն լեզուն: Արդէն 1333ին թարգմանուեցան Դոմինիկեանց Ժամագիրքն[3] եւ Պատարագամատոյցն Բարթու-

[1] Միաբանողաց մասին ընտիր գրուած մը տես Հ. Ղ. Ալիշան, “Սիսական„, Վենետ. 1893, էջ 382–408 “Միաբանող Եղբարք ի գաւառս Երնջակայ եւ Ջահկայ:„

[2] Տես Ցուցակ Ձեռք. մեր Մատ. (Վիեննա 1896), էջ 304, ըստ “Պատմչին կարգին Միաբանողաց:„ Կանոնաց խորագիրն է՝ “Կացուցմունք կարգի Եղբարց Քարոզողաց„: “Սիսական„ էջ 385 այս կանոնագրութեան թարգմանուելու որոշ տարին նշանակուած չէ գտած:

[3] Տպագրուեցաւ ասոր ալ երրորդ խմբագրու- 1714ին ի Վենետիկ՝ “Պրեվիար որ է Ժամագիրք սրբազան կարգին Քարոզողաց . . . Վենետիկ ՌՉԺԴ, ամիս Սեպտ. ի տպ. Անտ. Պորթօլի. Breviarium sacri Ordinis Fratrum Praedicatorum“ եւն: Յիշատակարանին մէջն ալ՝ ինչպէս Միսալին (զոր պիտի տեսնենք,) նոյնպէս ժամագրոցս համար կ'ըսուի՝ (էջ 122) “Նախկին ուրեմն թարգմանութիւն սորա եղեւ . . . յերանելւոյն Բարթուղիմէոսէ, յամի Կենսատուին ՌՅԼԳ (1333) . . . երկրորդ նորոգումն ի միաւոյն թարգմանութեան նորագունից տօնից եղեւ թուին փրկչին ՌՈԾԶ (1656) ի Գրիգորէ Տոսծորեցւոյ. իսկ երրորդ նորոգումն եւ թարգմանութիւնն հանդերձ տպագրութեամբ եղեւ . . . ի յետնագունիցս ամենից կրօնաւորաց ի Պատրի

*ղիմէոսի եպ. Մարաղայ ձեռնարկութեամբ եւ թարգմանութեամբ, ինչպէս կրնայինք ենթադրել, կամ Յակոբայ Քռնեցւոյ կամ Պետրոսի Արագոնացւոյ որ Բարթուղիմէոսի միւս գրութիւնքն ալ փոխադրած են Հայերէնի։[1] Փարիզի Թ. 215 ձեռագիրը Պետրոս Արագոնացին կ'անուանէ Միսալի թարգմանիչ։*

*Ինքնին կը հասկցուի որ Միաբանողաց այս թարգմանութիւնը լոկ իբրեւ գրական երկասիրութիւն մը Հայոց ծանօթացընելու նպատակաւ չէր, այլ իրենց Կարգի գործածութեան համար։ Միսալս արդեամբք ալ գործածուեցաւ նոյն ընկերութեան մէջ, որ յընթացս ժամանակաց բաւական բազմաթիւ վանքեր ու վանատներ ունեցաւ, երկար դարեր՝ մինչեւ Միաբանողաց սպառիլն անցեալ դարուն վերջերն։[2] Կրօնական վիճմանց առթիւ ծագած մեծ խորշումն եղած է այն պատճառաց մէկն ալ, որով այս Միսալն սահմանափակեալ մնաց որոշ շրջանի մէջ, առանց որեւէ ազդեցութիւն ունենալու Հայոց Պատարագամատոյցին վրայ, մինչդեռ Լամբրոնացւոյ թարգմանածը պաշտօնական գործածութիւն չունենալով հանդերձ, ազդեցութիւն ունեցաւ՝ փոխ տալով զգեստաւորման եւ մուտից մասերն Հայկականին՝ մինչեւ ցայսօր։ Այս երեւոյթը դիւրաւ կը մեկնուի նաեւ անով որ ԺԴ· դարէն ետքը մեր Սովորական Պատարագն աննշան փոփոխութիւն կրած է՝ արդէն իւր վերջնական կազմակերպութիւն առած ըլլալով։*

*Սակայն 1333ի թարգմանուած Միսալը նոյնպէս չմնաց միշտ։ Լատինական բնագրին կրած ճոխացմունք եւ վերջապէս Տրիտենդեան ժողովքի վճռոյն համեմատ վերակազմութիւն եւ Պիոսի Ե հրամանաւ որոշ ձեւով հրատարակութիւն եւն չէին կրնար առանց ազդեցութեան մնալ լատինածէս Հայ Պատրիներու Միսալին համար, որոնց գործածած թարգմանութիւնն ի հարկէ բաւական տարբերութիւններ ունէր եւ թերի էր։ Ասով պէտք տեսնուեցաւ հետզհետէ "Նորոգմանց„ կամ նոր խմբագրութեանց եւ պակաս մասերու նոր թարգմանութեան։ Բարթուղիմէոսի կամ առաջին թարգմանութեան յաջորդեց 1656ին նոյն կարգի Պատրիներէն Գրիգորի Ծործորեցւոյ խմբագրութիւնը կամ "Նորոգումն թարգմանութեան ընդ նորագունից տօնից„։ Քիչ մ'ետքն աս ալ բոլորովին գոհացուցիչ չնկատուելով՝ հիլորէ եւ վերջնական սրբագրութիւն մ'եղաւ Պատրի (Թովմաս) Խոջկաշէնցւոյ ձեռօք 1723ին, որ վերջնականապէս լոյս տեսաւ 1728ին աս խորագրով՝ "Միսալ որ է Պատարագամատոյց սրբազան կարգին եղբարց Քարոզողաց առաքելական իշխանութեամբ հաստատեցեալ, պատուականագունեղի Հօր եղբօր Թովմայի Ռիպօլ նոյնոյ կարգին Ջէնէրալ վարդապետի հրամանաւ տպագրեցեալ, ի Հռոմ ՌՉԻԸ (1728), ի տպարանի Ս. Ժողովոյն տէ*

---

Պետրոսէ եւ Պատրի Գրիգորէ„ եւն։ Տես "Մատենագիտ." էջ 586։

[1] Հմմտ. "Սիոնական„ էջ 385։ Բարթուղիմէոս եպ. Մարաղայ, հիմնադիրն Կրօնին, ծանօթ է Հայոց գրականութեան մէջ իւր բազմաթիւ գրութիւններովը. ի մասնաւորի՝ Վեցօրէի Մեկնութիւն (Ձեռ. մեր մատ. Թ. 249, Բ.) Քարոզգիրք (Թ. 312, 507). երկուքն ալ թարգմանութեամբ Յակոբայ Քռնեցւոյ։ Ուրիշ գրութիւնք տես Յուցակ եւն, էջ 1068, եւ "Սիոնական„ էջ 384—5։

[2] Եթէ ուրիշ ապացոյցներ ալ չըլլային, կը բաւէր նշանակել Միսալի բազմաթիւ օրինակութիւնքն, որ սփռուած կան նաեւ Եւրոպիոյ այլեւայլ գրատանց ձեռագիրներու հաւաքմանց մէջ՝ այլեւայլ դարեր գրուած։ Քանի մը հատը քիչ մ'ետքը պիտի յիշենք։ — Նոյնը կը յիշեն նաեւ եւրոպացի ճանապարհորդներ, որ առիթ ունեցան տեսնելու Միաբանողաց պատարագը Հայաստանի մէջ. այսպէս Ամբրոսիոս Կանդօրինի 1477ին (տես "Սիոնական„, էջ 391բ։)

Փրօփականտայ Ֆիտէ, հրամանաւ մեծաւորաց:[1]„ Այս վերջին սրբագրութիւնը եւ տպագրութիւնն արդէն քիչ կը տարբերի լատինական սովորական Միսալէն՝ նոյն կարգին քանի մը յատուկ մասերուն պատճառաւ:

Հոս պէտք կը տեսնենք յառաջ բերել տպագրիչ-խմբագրչի յիշատակարանին էական մասերն որ կարեւոր տեղեկութիւններ կը պարունակեն իւր գործոյն եւ նախընթաց խմբագրութեանց մասին[2]: "Բան առ բարեսէր ընթերցօղս:... Ամենայն ջանիւ, մեծաւ զգուշութեամբ եւ վճռաձեւ տքնութեամբ աշխատելով. (ահա կարճ ի կարճոյ զեկուցումն.) յետ որոյ սրբազան ժողովն Հռօմէականի, դէ Փռօփականդայ Ֆիտէ, հաւանեցաւ տպագրելոյ զՄիսալս: Հրամանաւ նոցին՝ ելեալ ի Հռօմայոյ, գնացի ի Վէնէտիկ, յամի Տեառն ՌՉԻԳ (1723). եւ անդ գրեալ եւ թարգմանեալ օրինակեցի ամբողջապէս, ամենեւին համաձայնելով ընդ Լատինացւոց, վերատեսչութեամբ եւ վերաճանաչմամբ վերապատուելեաց Հարց՝ Մխիթարայ Աբբայի եւ Խաչատրոյ վարդապետի, ըստ յանձնելոյ ասացեալ սրբոյ ժողովոյն. եւ զկնի եզերելոյ, վերստին դարձայ ի Հռօմ, յամի Տեառն ՌՉԻԴ (1724): Եւ յետ բազում դժուարութեանց եւ վշտակրութեանց (թող զայլ նեղութիւնս, զոր մի ըստ միոջէ գրելն ձանձրութիւն է,) սուրբ տարւոյն որ էր թուին փրկչին ՌՉԻԵ (1725), սկսաւ տպագրութիւն մինչեւ ցամն ՌՉԻԸ (1728) Օգոստոսի Ը հազիւ հազ օգնականութեամբ Աստուծոյ . . . աւարտեցաւ զտպագրութիւնն սրբոյ մատենիս: Բայց այսու ամենայնիւ գիտեմ է ոչ հանգեաւ սիրտ իմ, այսինքն ոչ եղեւ ըստ ըղձից իմոց, նաեւ ոչ եւս որպէս վայելէրն սրբոյ մատենիս, որ ոչ թուղթն է օգուտ, եւ ոչ զտիպն կամ զգիրն. իրաւ է կարի յոյժ ջանացի, բայց քան զայս աւելի տեղ, ճար եւ հնար ոչ գտի:... Նախկին Թարգմանութիւն սորա եղեւ ի երանելոյն Բարթողիմէոսէ, զարհեպիսկոպոսէ, յերկրէն իտալիոյ, ի կարգէ Սրբոյն Դոմինիկոսի, յամի Տեառն ՌՅԼԳ (1333), յորժամ հիմնեալ հաստատեաց զսրբազան կարգն Քարոզողաց ի մեծն Հայաստան, ի գաւառն Նախիջեւանու: Երկրորդ նորոգումն թարգմանութեան ընդ նորագունից տօնից, եղեւ ի լուսաւոր հոգի Գրիգորէ Ծործորեցւոյ, աստուածաբան վարդապետէ, ի նոյնոյ կարգէ Քարոզողաց, եւ ի վերոյ ասացեալ գաւառէ, յամի Տեառն ՌՈԾԶ (1656): Իսկ երրորդ Թարգմանութիւն եւ նորոգումն, հանդերձ փոփոխութեամբ, եղեւ ի անարժան եւ չնչին կրօնաւորէ, յետնագունեղէ ամենից կրօնաւորաց, անպիտան, անօգուտ եւ անտեղեակ բանից, ի Պօղոսէ . . . է Խօշկաշէնեցւոյ, ի յայնմանէ վերոյիշեցեալ կարգէ Քարոզողաց, եւ ի նոյնոյ գաւառէ: Արդ խոնարհաբար մաղթելով„ եւն:

Ըստ այսմ Խոշկաշէնցի դիտմամբ ծածկած է իւր անունը՝ կէտերով նշանակելով: Ըստ Հ. Ղ. Ալիշանի[3] Պատրի Թովմաս Խաչվերտեանց ըլլալու է թարգմանիչ-տպագրիչն. միւս կողմանէ կը յիշէ թէ Հ. Դոմինիկոս Ապրակունեցի 1723ին այս երրորդ կամ սրբագրեալ խմբագրութեամբ Միսալը Վենետիկ բե-

[1] Լատիներէն ճակատն է՝ Missale sacri Ordinis Praedicatorum, auctoritate Apostolica approbatum. Rmi P. F. Thomae Ripoll, ejusdem Ordinis Generalis Magistri, jussu editum. Romae MDCCXXVIII typis Sacrae Congregationis de Propaganda Fide. Superiorum permissu. Գիրքն է մեծադիր՝ էջք 34 (առանց թուարկութեան) + 452 + 92:

[2] Սկզբան տառից թուարկութեան թղթոց վերջին (34գ) էջին վրայ, ուր՝ ինչպէս կը ծանուցանէ Խոշկաշէնցի, սահմանուած էր դնել յիշատակարանն էջը դատարկ չթողլու համար: Տես նաեւ "Մատենագիտ.„ էջ 430—1 եւ Ցուցակ Ձեռագր. մեր Մատ., էջ 305:

[3] "Սիսական„, էջ 405 (սիւն Ա—Բ:)

լած է, ուստի ճշդիւ ինչպէս կը պատմէ Խոշկաշէնցի իւր անձին մասին այլ վերյիշեալ յիշատակարանին մէջ։ Այսպէս կամ այնպէս Խոշկաշէնեցւոյ ստրագրեալ բնագիրը Միսալիս զարգացման վերջին եւ պաշտօնական ձեւն է, եւ տպագրութեամբ ծանօթացած ըլլալով՝ մատչելի է ամէն բանասէրի։ Մտադրութեան արժանի են երկու նախընթաց խմբագրութիւնքն, որ անտիպ մնացած են եւ պիտի մնան անշուշտ տակաւին երկար ժամանակ. բայց բաւական յաճախ կը հանդիպին ձեռագրաց հաւաքմանց մէջ, մանաւանդ յԵւրոպա՝ ուր շատ կը յաճախէին հայ Դոմինիկեանք իրենց կարգին եւրոպական այլեւայլ տներն երթեւեկելով եւ բնակելով՝ մինչեւ ի Սպանիա անգամ։ Այս կարգի բազմաթիւ տեղեկութիւնք հաւաքած է Հ. Ղ. Ալիշան իւր վերյիշեալ գործոյն "Դրուագին" մէջ։

Աւելորդ չենք համարիր հնագոյն խմբագրութեան ձեռագրաց մէկ քանին յիշել։ Ամէնէն հիներէն է Միլանոյ Ամբրոսեան գրատան 1358ին գրուած մագաղաթեայ մեծ բոլորգրով օրինակը (Թիւ՝ T. 58, P. I, Sup.), որուն գրիչն է "Գրիգորիոս Վերիոյ արհեպ." եւ գրութեան տեղը Պիզա քաղաք Իտալիոյ՝ թարգմանութենէն 25 տարի ետքը միայն։[1] Նոյն գրատան ուրիշ մէկ ձեռագրին (Թիւ A. 44, Inf.) ճակատին վրայ կը յիշուի "Փրա Պետրոս Պաւղոս։[2]" Կէս դար ետքն է Վերին Աւստրիոյ Ս. Փլորիան (Աւգոստինեան կրօնաւորաց) վանքին գրատան օրինակը, մագաղաթեայ բոլորգիր, որ նոյնպէս Եւրոպա գրուած է, այսինքն "ի մայրաքաղաքն Մակենցիա" 1391ին Սարգիս-Յակոբոս քահանայ բժշկէն։[3] Հ. Ղ. Ալիշան կը յիշէ Փր. Ղուկաս Տահրունցւոյ 1442ի գրած Միսալն, որուն յիշատակարանէն մաս մ'ալ յառաջ կը բերէ։[4] Արդ այս 1442ին

[1] Թղ. 292բ "Ցամի մարդեղութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Ռ. Յ. Ծ. եւ ութն (1358) աւարտեցաւ գիրք պատարագաց յունվարի. Ը...։ Եւ արդ գրեցաւ ձեռամբ փցուն եւ անարհեստ գրչի Գրիգորիոսի Վերիոյ արհիեպիսկոպոսի Թեղէսի եւ անարժան ի գաւառի յԻտալիացոց ի մայրաքաղաքս անուն կոչեցեալ Պիզ, ընդ հովանեաւ Հայոց տանն սրբոյն Անտոնիոսի ... ի խնդրոյ քրիստոսասէր եղբօրն անուն Աւետիս կոչեցեալ ի քաղաքէն Արզրում...։ Եւ թարգմանեցաւ գիրքս այս ի Լատինացոց գրոյն ի հայկական բառս մեր" եւն։ — Այս եւ յաջորդ տեղեկութիւնը կը քաղենք տակաւին անտիպ Ցուցակէն հայ ձեռագրաց Վերին Իտալիոյ, կազմեալ ի Հ. Գրիգորիսէ Վ. Գալէմքեարեան։ Մանրամասնութիւնք տես նոյն գործքին մէջ, որ լոյս պիտի տեսնէ ոչ շատ ժամանակէն։

[2] Լատ. ճակատն է՝ Missale Romanum de Latinis in Armenam linguam translatum a Rev. Fratre Petro Paulo Copus (կոպէս) Armeno, auspiciis Illmi et Rmi DD. Federici Cardinalis Borromaei Archiepiscopi Mediolani. Ex Bibliotheca Ambrosiana anno 1615. Այս Փր. Պետրոս Պօղոս գրիչ է միայն ի հարկէ, եւ ոչ բուն թարգմանիչ Միսալին. եւ այլուստ անծանօթ անձ չէ։ Կը յիշուի իւր թարգմանութիւնն "Պարզաբանութիւն Քրիստոնէական Վարդապետութեան" գրոց։ Տես "Սիսական" էջ 395։

[3] Ոտանաւոր յիշատակարանին (Թղ. 203բ—204ա) վերջերը կ'ըսուի արձակ գրուած՝ "Արդ գրեցաւ ի մայրաքաղաք ի Մօկէնցէոյ ընդ հովանեաւ սրբոյհոյ Կոյսին Մարիամու եւ սուրբ խոստովանող հայրապետին սրբոյն Մարթինոսի եւ սրբոյ Քրիստափորին մարտիրոսին, ի թվի Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի Ռ. ի Գ.Ճ. եւ ՂԱ (1391.) դարձեալ աղաչեմ զձեզ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի աղօթել վասն ինձ մեղուցեալ վերոյ ասացեալ Սարգիս մեղաւոր քահանայի" եւն։ — Մտադրութեան արժանի է որ գրիչը կ'ըսէ թէ ինքն ստիպուած էր կարգի բերել պատարագներն, գրելով նոյն յիշատակարանին սկիզբն՝ "Ես ծերացեալ մեղօք ի լի, Սարգիս երեցս յաշխարհ հեռի, Սկըսայ գրել տառ պատարագի, Եւ որ ինչ չգտանէի. Նայ եկն առ իս ծեր մի Սըսցի, Թորոս անուն իւր կոչի, Եւ եբեր օրինակ խառնափնթի, Յետ ես յաւել պատարագնի. Աշխատանօք զոր կարացի, Եւ մեծ ջանօք ի կարգ ձգեցի, Նայ եւ է յայլեւայլ երգս առէ, Եւ զինչ է պակաս ես այլ չգտի" եւն։

[4] "Սիսական", էջ 390։

գրուածն է Փարիզի Թ. 215 ձեռագիրը կարեւոր յիշատակարանաւ։ Երկու օրինակ կայ Փարիզու Ազգային Մատենադարանին մէջ։ Առաջինը (Թ. 141, Cod. Arm, Suppl. 3, Ցուցակ Պարոնեանի եւ Մակլէրի Թ. 10) թղթեայ բոլորգիր ձեռագիր մըն է, այնու նշանաւոր որ Միաբանողաց կարգէն նշանաւորաց միոյն՝ Հ. Օգոստինոսի Բաջենց՝ ուղեգրութիւնը կարեւոր տեղեկութիւններով կը պարունակէ։[1] Այս տեղեկութեանց կարեւոր մասերն քաղած եւ հիւսած է «Սիսական», բազմահմուտ հեղինակն իւր վերոյիշեալ նշանաւոր գործքին մէջ։[2] Նոյնպէս թղթեայ բոլորգիր է երկրորդ օրինակը (Թ. 215, Cod. Arm. Suppl. 71, Մակլէր՝ Թ. 41) 264 թղթով (մեծութիւն 23×16 սնթմ. երկսիւն, իւրաքանչիւրը 35 տողով։) Շատ կարեւոր է ձեռագրիս յիշատակարանն, որ կը ծանօթացընէ Բարթուղիմէոսի թարգմանութեան բուն գործակիցը՝ Պետրոս Արագոնացի[3] եւ ամբողջ Միսալին թարգմանութեան տարին՝ 1337. ըստ այսմ 1333ի թարգմանութիւնը, կ'երեւայ, մասնական էր տակաւին։ Ահա այս յիշատակարանը՝ (Թղ. 294բ.) «Փառք...։ Արդ ի յամի ծննդեան փրկչին մերոյ հազարերորդի [երեք] հարիւրերորդի երեսներորդի եօթներորդի (1337) թարգմանեցաւ Պատարագամատոյց եւլոյ տուրոյն որ կոչի Միսալ, ի լատին բարբառոյն ի Հայս, կարգեալ ըստ սովորութեան սուրբ եկեղեցւոյն Հռովմայ եւ ըստ կարգի (՞) Քարոզողաց, ձեռամբ Ֆրա Պետրոսի ազգաւ լատին եւ աշխարհաւ Արականացի[4] ի կարգէ Քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի ի վերին վանքն Քռնոյ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին, որոյ առաջնորդ եւ հոգաբարձու էր Յոհան վարդապետն, որ մականուն կոչի Քռնեցի, յորոյ անունն շինեցին զսուրբ ուխտս աստուածասէր բարեպաշտ պարոն Գորգն եւ տիկին Էլթիկն, եւ ինքնայօժար կամօք նուիրեցին զվանքս կարգին Քարոզեցւոց սրբոյն Դոմինիկոսի տունք յաւիտենական...։ Եւ աղաչեմք զի որք օրինակէք զգիրքս՝ զսակաւ յիշատակարանս գրեցէք ստանաւորքն հանդերձ եւ դուք գրեսջիք ի գիրն կենաց. Ամէն։ Պատուական վարդապետ Փր. Յովսէփ, վարդապետ կարգիս Միաբանողաց ընկալ սակաւ աշխատող եւ կարկատող գրոցս զՓրա Դմկս[5] (Ղուկաս) զանարժան Շհպնեցիս (Շահաբունեցիս)... ի թուին մարդեղութեան Տեառն ՌՆԽԲ (1442), Նորոգեցաւ Միսալս։ Թվին... Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՆԾԹ (1559 այսպէս) կազմեցաւ Միսալս Փր. Յուսէփի ձեռամբ» եւն։

---

[1] Ձեռագիրս Թերի Միսալ մըն է 109 թղթով։ Թղ. 3—57 կան Պատարագներ տօներուն՝ Ս. Միքայէլ, Ս. Գաբրիէլ, Սրբուհի Կատարինէ, Երանելի Վինսենսիոս, Ս. Անտոն Փլորենցիոյ։ Թղ. 58ա—62բ «Պաշտօն պատարագի իւր կանոնօքն յամենայն օր։» Թղ. 63 կը սկսի Բաջենցի Ուղեգրութիւնն, որուն սկիզբը գրուած լատիներէն խորագիրն 1674 տարեթիւը կը կրէ, գրքին վերջը լատիներէն յիշատակագրութիւն մը 1646 թուականը։

[2] Տես «Սիսական», էջ 394—95 եւն։

[3] Թղ. 264ա ստորնաւոր յիշատակարան մ'ալ կայ, որուն սկզբնատառք կը կազմեն՝ «Յոհան Վարդապետն որ կոչեցեալ Քռնեցի ի (եւ) Յովհաննէս Թարգմանն ի կարգէ Քարոզողացն։» Դժբախտաբար այս ստորնաւոր յիշատակարանն օրինակած չէ Մեծ. Մեսրոպ Վրդ. Տէր-Մովսէսեան, որուն ձեռագիր եւ տակաւին անտիպ Ցուցակէն կը քաղեմ Փարիզի ձեռագրաց տեղեկութիւնքն։

[4] Որչափ ալ հոս միայն Արականացի կը յիշուի իբր թարգմանիչ, չենք տարակուսիր որ հայերէնին բուն յերիւրողն եղած ըլլայ Ֆրա Յովհան Քռնեցի, որուն անունը կը յիշուի ալ նախընթաց էջին ստորնաւոր յիշատակարանին մէջ։ Նոյն իսկ Արագոնացւոյ գրութեան թարգմանողն եղած է Յակոբոս, ինչպէս կը տեսնուի իւր յիշատակարանէն մեր Մատենադարանի Թիւ 293 ձեռագրին (Պետրոսի՝ վերլուծութեանց Արիստոտէլի։) Տես Ցուցակ, էջ 720։

[5] Այսպէս մեր առջեւ եղած օրինակութիւնն «Դմկս.» պատուով։ «Սիսական» (էջ 390) «Ղուկաս» կը կարդայ։

Շատ աւելի կարեւոր է Փարիզի Մատենադարանի երրորդ ձեռագիրը Cod. Arm. 22 (Պարոնեան՝ Թ. 80, Մաքլէր՝ 40), այնու որ Լատինացւոց Միսալի Նոր Թարգմանութեան կամ չորրորդ խմբագրութիւն մը կը ներկայացընէ, եւ այն՝ նոյն ԺԴ. դարուն. գրուած Բարդուղիմէոսի կամ առաջին թարգմանութենէ հազիւ 50 տարի ետքը՝ 1381ին։ Ձեռագիրս 238 թղթով նոտրգիր մատեան մըն է (գրութիւնն երկսիւն, իւրաքանչիւրն 22.5 × 8 սնտմ., 33 տողով սիւնը), գրուած Պօղոս Աբեղայէն ի Պոլոնիա Իտալիոյ։ Խորագիրն է (Թղ. 7ա) "Գիրք Պատարագաց ըստ սահմանին սուրբ եկեղեցւոյն Հռոմայ։" Ինչպէս գլխաւոր յիշատակարանին մէջ մանրամասն կը պատմուի, պարզ օրինակութիւն չէ ձեռագիրս, այլ նոր թարգմանութիւն, սակէ հնագոյն կամ Բարթուղիմէոսի թարգմանութիւնը "անհաճելի" գտնելով "վասն տխմարութեան թարգմանողացն"։ Յիշատակարանս (Թղ. 241բ) ըստ այսմ մեր խնդրոյ համար կարեւորութիւն ունենալով, կը դնենք հոս լիակատար։

"Յիշատակարան Թարգմանութեան երկոցս։ փառք....։ Ի թիւ մարդեղութեան Քրիստոսի Ռ. Յ. Ձ. Ա. (1381)։ Եղեւ զի ակնարկութեամբ Աստուծոյ եւ հրամանաւ տէրանցն մերոց կաթողիկոսին Հայոց Տէր Մխիթարայ եւ թագաւորին Հայոց Լեւոնի, Յովհաննէս եպիսկոպոս Մեծքարուն, զպարոն Գրիգոր առաքեցաք դեսպան ի մեծահռչակ դուռըն Հռոմա առ սուրբ պապն Զ. երրորդ Կլէմէնթոս՝ վասն իրիք ինչ հաւատոյ քննութեան Հայոց եկեղեցւոյն. եւ մինչ էաք աստ դեգերմամբ իբրեւ Դ. ամաւ ի հռչակաւոր քաղաքիս Վենիսն, տեսանելով զպայծառութիւնս եկեղեցւոյն Հռոմա, զանթիւ մատուցմունքն զպատարագաց, զմեծամեծ բարիքն եւ զփրկութիւն հոգւոց. եւ կարի յոյժ ցանկացաք ըստանալ զգիրգ պատարագիս որ թարգմանի ի լաթինն Միսալ. իբրեւ ոչ կարէաք ի ձեռն ածել՝ զի ոչ ունէաք լաւագոյն թարգման, յոյժ տրտմեալ էաք։ Իսկ ամենատեսն Աստուած էբեր մեզ այր մի ֆրա Մի որ (ձեռ. "ֆրամինոր") է կարգէն սրբոյն Ֆրանչիսկոսի, Պետրոս անուն, իմաստուն վարդապետ եւ յոյժ հմուտ Հայոց լեզուին եւ Ֆրանգին, եւ մեք աղաչեցաք զնա վասն թարգմանութեան Միսալ[ի]. եւ մեծ սիրով եւ խոնարհութեամբ եկն եւ բնակեցաւ առ մեզ ի մեր իջեւանս, եւ Թարգմանեաց զայս սուրբ գիրս պատարագաց յիստակ հայերէն, ամենեւին ունելով զմիտս եւ զիմաստութիւնս լուսն Միսալին, որ ամենայն օր պատարագ կայ է Գոբէքին սուրբ Պապին եւ յամենայն քաղաքս Հռոմա։ Դոն եւ այլ թարգմանք, բայց էին անհաճելիք վասն տխմարութեան Թարգմանողացն. բայց այս հաճելի եղեւ ամենայն Հայոց վարդապետացն որ աստ կային։ Վասն այնորիկ աղաչեմ զսիրելի եղբայրսդ ի Քրիստոս Յիսուս, ով ոք իցես որ փափաքիցես եւ կամիս գրել զսուրբ պատարագագիրքս վասն սիրոյն Քրիստոսի եւ զյիշատակարանս յայսմ տեղւոջս. եւ առցես վարձս ի Քրիստոսէ։ Եւ զայս կամեցաք մեք վասն երկու պատճառի։ Նախ զի գիտասցեն ամենեքեան թէ ի լաւ եւ յընտիր թարգմանեալ է ամենեւին լաթինն ի հայերէն փոխած. եւ երկրորդ՝ յիշատակեսցեն զի զվարձս առցեն ամենեքեան՝ ովք աշխատեալ ի սմա, թէ մեծամեծք եւ թէ փոքունք։ Աւարտեցաւ ի սոյն ամի, ի մարտի ամսոյ ԻԵ. եւ թուականութեանն Հայոց ՁՃԶԴ. (այսպէս) ի փառս Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ" եւն։

Այս շատ կողմանէ կարեւոր յիշատակարանին մէջ մէկ երկու մթին եւ շփոթ կէտեր կան, որոնք յառաջ եկած են անկէ որ դեսպանաց եւ թարգմանութեան յիշատակարանը խառնուած է սկիզբը գրչին Պօղոս Աբեղայի յիշատակարանին հետ: Ձեռագրին մէջ այսպէս է բուն յիշատակարանին սկիզբն “ի Թիւ մարդեղութեան Քրիստոսի Յիսուսի. Ռ. Յ. Զ. Ա. եղեւ զե„ եւն, ուստի 1381ին կը դրուի Յովհաննու եպիսկոպոսի եւ Պարոն Գրիգորի դեսպանութիւնն եւ հետեւաբար իբր 4 տարի ետքը Միսալին թարգմանութիւնը: Բայց հոս գրչութեան սխալ մը կայ անպատճառ. 1381 տարին ձեռագրիս գրուելու տարին է Պօղոս աբեղայէն ի Պօլոնիա, ինչպէս ուրիշ յիշատակարան մ'ալ կը ցուցնէ.[1] իսկ թարգմանութիւն եղած է “Պօնօֆայ„ Փրանկիսկեանէն “ի Վենէտիկ„ կամ Վենետիկ: Բաց աստի 1381ին չի կրնար ըլլալ. այնու որ այն ժամանակ չէին կրնար դեսպանութիւն մը խաւրել ոչ Միխիթար կաթուղիկոս (1341—55), ոչ Կի կամ Գուիտոն թագաւորն (1342—44) եւ ոչ Կղեմէս Զ ընդունիլ (1342 մայիս 7—1352, Դեկտ. 6:) Այս պատմուած դեսպանութիւնն ալ անծանօթ դէպք մը չէ. 1343ին էր որ Միխիթար ժողով գումարեց ի Սիս խորհելու Հայոց վրայ եղած ամբաստանութեանց մասին. եւ 1344ին էր որ Կի եւ Միխիթար երկար ապաբանութեան թղթով դեսպանութիւն խաւրեցին ի Հռոմ՝ զՅովհ. եպ. Կրակայ, պարոն Գրիգոր (Սոգենց), Դանիէլ Դաւրիժեցի Մինոր եւն, որոնք ընդունուեցան Կղեմէս Զ. քահանայապետէն Սեպտեմբեր ամսուն նոյն տարւոյն: Եթէ ըստ այսմ ճիշդ է յիշատակարանիս խօսքը թէ դեսպանք “Դ. ամա„ դեգերել պէտք տեսան յՆւրոպա եւ գլխաւորաբար Վենետիկ եւ նոյն տարին գտնելով “Պօնօֆաց„ Փրանկիսկեանն թարգմանել տուին, թարգմանութեան տարին պիտի ըլլայ իբր 1348—49 Մարտի: Դժբախտաբար ճիշդ այս թարգմանութեան տարեթիւն աղաւաղուած է յիշատակարանիս վերջը “ՁճԶԳ„ գրուած ըլլալով (այսինքն 1234 որ անհնար է. կարելի է փոխել “ՁճՂԳ„ այսինքն 1344, որ ուղիղը կրնայ ըլլալ:)

Այսպէս կամ այնպէս ԺԴ դարուն՝ իբր 1349ի՝ կը գտնենք ուրիշ թարգմանութիւն մ'ալ լատինական Միսալին, ուստի իբր 17 տարի միայն ուշ քան Բարթուղիմէոսի թարգմանութեան սկիզբն 1333ի, որ աւարտեցաւ, ինչպէս տեսանք՝ 1337ին, ուստի միայն 12 տարի կանուխ: Թերեւս ասոր համար է յիշատակարանին ըսելը թէ կային այլ “թարգմանք„ ալ, բայց “անհաճելի„ էին: Դժբախտաբար այս թարմանութենէն եւ ոչ կտոր մ'ունինք առջեւնիս տեսնելու համար թէ ինչ կարգի բնագիր էր եւ թէ արժանի է այն գովութեան, որուն կ'արժանանայ յիշատակարանիս մէջ իբր “յիստակ հայերէն„ լեզուին պատճառաւ: Թարգմանել տուողները կը պնդեն որ այն Միսալն է թարգմանուածն, որ Նաեւ “ի գաբիթըն Պապին„ եւ “յամենայն գուրդս Հռոմայ„ կը գործածուէր: Բայց միւս կողմանէ թերեւս առանց ազդեցութեան չէր Դանիէլի Մինորի հայազգի Փրանկիսկեան կրօնաւորի նոյն դեսպանութեան մէջ գտնուիլն, ինչպէս նաեւ “Պօնօֆաց„ թարգմանչին Փրանկիսկեան մ'ըլլալը: Արդէն ասկէ

[1] Պօղոս աբեղայի կամ գրչին յիշատակարանն է (Թղ. 234ա.) “Ցամի մարդեղութեան Ցեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՑԶԱ (1381.) աւարտեցաւ գիրք Պատարագիս յամսեանն յօգոստոս ի ա...: Եւ արդ գրեցաւ ձեռամբ փցուն գրչի Պօղոս անուն աբեղայի Առաքելոյ ի գաւառի խուզեացոց ի մայրաքաղաքիս որ կոչի Պօլոն, ընդ հովանեաւ Սուրբ Հոգւոյն ... ի հայրապետութեան տէրանց Ուրբանոսի Ը. երորդ (պապէս) պապին„ եւն: — Վերջին էջին վրայ կայ յիշատակարան մ'ալ Ոսկան վարդապետէն եւ այլ Հայոցմէ՝ 1670ին:

*կրնայ մակաբերուիլ որ Փարիզի ձեռագրին պարունակած Միսալը լատինական եկեղեցւոյ Փրանկիսկեան կրօնաւորաց գործածածն էր։*[1]

*Թողլով այս նոր թարգմանութիւնն ալ, որուն բնագրին մասին աւելի մանրամասն տեղեկութիւնք չունինք՝ առձեռն չունենալով եւ ոչ հատած մ'անկէ օրինակուած, կը դառնանք դարձեալ Միաբանողաց Միսալին։ Աւելորդ է ըսել որ բաց ի վերոյիշեալ ձեռագիրներէն՝ տակաւին շատ ուրիշներ կան սփռուած ամէն կողմ։*[2] *Պէտք կը տեսնենք հոս յիշել միայն երկու ձեռագիր ալ մեր Մատենադարանէն, այնու որ ասոնք միայն առջեւնիս ունինք յաջորդ Խորհրդատետրին հրատարակութեան համար։ Առաջինն անկոկ մագաղաթի վրայ բոլորգիր ձեռագիր մըն է (Թ. 67), սկիզբէն եւ վերջէն պակաս, բայց Հասարակաց Պատարագը կամ օրըստօրէն լիակատար ունենալով, հնագոյն թարգմանութեան համեմատ, եւ գրուած նախ քան ԺԷ դար։*[3] *Երկրորդը թղթեայ օրինակ մըն է (Թ. 463) յոյժ գեղեցկութեամբ՝ բուն իսկ Տաճրունեաց վանքը գրուած 1723ին Պատրի Պետրոսէ,*[4] *ուստի այն միջոցին, երբ արդէն Խոչկաշէնցի Վենետիկ կու գար իւր սրբագրած բնագիրը բերելով՝ հոն "վերաճանաչմամբ" Մխիթար Աբբահօր եւ Խաչատրոյ վարդապետի աւարտելու համար։ Կրնար կարծուիլ ըստ այսմ որ Պատրի Պետրոսի գրածը Խոչկաշէնցւոյ կամ տպագրուած խմբագրութեան համեմատ է։ Անշուշտ, ինչպէս պարզ համեմատութիւն մը կը ցուցընէ, շատ մերձաւոր է անոր. բայց բոլորովին նոյն ալ չէ։ Չենք դանդաղիր մենք Թ. 463 ձեռագրի բնագիրը Գրիգորի Ծործորեցւոյ խմբագրութեան համեմատ եւ գոնէ մասամբ անոր ներկայացուցիչն համարելու։*

*Ըստ այսմ երկու ձեռագիր ունինք միայն յաջորդ բնագրին համար, զոր մեր գրութեանս մէջ առնելու երկար ատեն դանդաղեցանք։ Երկասիրութեանս նպատակէն դուրս կը մնար ի հարկէ ընդարձակածաւալ Միսալի հրատարակութիւն մ'ընելու փորձն անգամ ընել։ Միւս կողմանէ նկատելով որ յաջորդ պատարագը դարերով գործածուած է Հայոց բազմանդամ Միաբանութենէ մը (միջոց մը մինչեւ 700 հոգի կ'ըսուի եղած ասոնց թիւը), եւ իբրեւ ճաշակ իրենց պաշտաման մատեննին, դրինք հոս միայն բուն Պատարագը կամ օրըստօրէն, որուն այլեւայլ տեղեր կը մածուին աւուր-պատշաճքն։ Նպատակնիս էր ի հարկէ հնագոյն խմբագրութիւնը ներկայացընել՝ ինչպէս որ կայ Թ. 67ի մէջ*[5], *եւ որ տեղ տեղ տարբեր է արդի լատինականէն եւ աւելի Խոչկաշէնցւոյ տպագրածէն։ Այս օրինակին բնագիրն անուանեցինք* "Ա. Խմբագրութիւն" *կամ* A։ *Դիմացը դրած ենք Թ. 463ի (կամ Գրիգորի Ծործորեցւոյ) բնագիրը նոյնպէս միայն օրըստօրէ պատարագի մասը՝*[6] *նշանակելով* "Բ. Խմբգր." *կամ* B։ *Բայց՝ ինչպէս*

[1] Brightman, p. XCIX. յիշելով Փարիզի երեք ձեռագիրներն, այս ձեռագրին (Cod. Arm. 22) պարունակած Միսալը Franciscan կ'անուանէ, զատելով միւս երկուքէն որ Dominican Միսալ են։ Կամ նոյն գիտնականն կամ այն՝ որմէ քաղած է յիշեալ տեղեկութիւնը, լաւ ուսումնասիրած ըլլալու է ձեռագիրն, որով ճանչցած է անոր տարբեր թարգմանութիւն ըլլալն։ Ուստի իւր տուած "փրանկիսկեան" տիտղոսը՝ չենք տարակուսիր՝ յարմար եւ ճիշդ ըլլալու է։

[2] Էջմիածնի հազարաւոր ձեռագրաց մէջ չենք կրնար կարծել որ պակսին Միսալի օրինակներ, թէեւ Կարենեանցի ցուցակին մէջ չկրցանք գտնել։ Վիեննայի հաւաքման ձեռագիր ցուցակի մը մէջ ալ չգտանք Միսալներէս եւ ոչ մին յատկապէս նշանակուած. որ ի հարկէ չի նշանակեր թէ նոյն ճոխ հաւաքման մէջ կը պակսին բոլորովին։

[3] Մանրամասնութիւնք տես Ցուցակ Ձեռագր. Մեր Մատ., էջ 3 4—5։

[4] Տես Ցուցակ, էջ 937—8։

[5] Թիւ 67, Թղ. 93ա$^1$—102բ$^1$.

[6] Թիւ 463, Թղ. 49ա—60ա։

*պարզ համեմատութիւն մ'ինքնին կը ցուցընէ, բուն աղօթքները մեծ տարբերութիւն չունին Ծործորեցւոյ խմբագրածին մէջ հնագունէն, բայց միայն քանի մը յաւելմամբ կամ յապաւմամբ, տողի մ'այլազան դարձուածով եւ նման մանր տարբերութիւններով։ Արդէն Ծործորեցի եւ նաեւ Խոշկաշէնցի «Նորոգեալ» միայն բռած են հին բնագրին՝ հետզհետէ աւելի մերձեցընելով լատինականին, միայն թերի եւ նոր կամ պակասներն (յաւուր պատշաճից եւն) նոր թարգմանելով, խրատագիրները նոր յերիւրելով, մասանց կարգի տեղափոխութիւններ ընելով, եւն։ Աւելորդ կրկնութիւն չընելու համար այն ամէն տեղ, ուր* B *նոյն էր* A *խմբագրութեան հետ, միայն սկզբնաւորութիւնը նշանակած ենք* B*ի սիւնակին մէջ, եւ դարձեալ դիմացը դրուած* A *խմբագրութենէն ունեցած տարբեր տեղերը նշանակուած. իսկ ուր ամբողջ աղօթքը կամ բոլորովին նոր կամ մեծ տարբերութեամբ կը գտնուէր ի* B*, դրած ենք լիակատար։*

*Երկու խմբագրութիւնքս ալ անտիպ են։ Տպագրուած է երրորդը կամ Խոշկաշէնցւոյն, զոր նոյնպէս ամբողջապէս հոս կրկին տպագրել բոլորովին անօգուտ եւ աննպատակ էր, քանի որ դիւրաւ մատչելի է ամէն բանասիրի հրատարակուած ըլլալով։ Միւս կողմանէ տպագրուած Պատարագն ընդհանրապէս խօսելով՝ շատ չի տարբերիր Թ.* 463*ի կամ* B *բնագրէն։ Ուստի միայն ուր կարեւոր շեղումն ունէր տպագրութիւնը՝ նշանակած ենք յաջորդ բնագրին ներքեւ ծանօթութեանց մէջ՝* C *համառօտութեամբ նշանակելով։*[1] *Ասկէ աւելի բաղձալի էր մեզ Փրանկիսկեան Պատարագը կամ Փարիզի* Cod. Arm. 22 *ձեռագրի թարգմանութիւնն ունենալ՝ համեմատելու համար, որով նաեւ նոյն թարգմանութեան որպիսութեան մասին գաղափար մը կ'ունենայինք։*

*Երկու բնագիրներն ալ ճշդիւ ձեռագրաց համեմատ են։ Սակայն երկասիրութեանս նպատակին համար երկրորդական ըլլալով՝ պէտք չտեսանք այս արդէն երկար գլուխն աւելի երկարցընել համեմատութիւններով։ Միայն կը յայտարարենք հոս որ թէ* A *եւ թէ* B *սխալագիր էին յաճախ. իսկ մենք ուղղագրութեան սխալներն ուղղած ենք՝ առանց ներքեւ ծանօթութեանց մէջ նշանակելու ձեռագրին ընթերցուածներն։ Քերականական անճշդութիւնք եւս թողուած են ձեռագրին համեմատ։ Նոյնպէս աւելորդ համարեցանք ընդհանրապէս լատինական բնագրին հետ համեմատել զանոնք. արդէն կարեւոր կէտերը կրնան տեսնուիլ նախընթաց Հռովմայեցւոց Պատարագի ծանօթութեանց մէջ ալ։ Բաց աստի երկու բնագիր դիմացէ դիմաց դնելու դիւրութեան պատճառաւ եւ ընդհանրապէս պարզ գաղափար մը տալու համար միայն ըլլալով յաջորդը, չդրինք միւս բնագիրներուն պէս մեծ տառերով, այլ երկսիւն մանրագիր։*

*Քանի մ'ուրիշ կէտերու մասին կը խօսինք այս մասին ծայրը՝ բնագրէս ետքը։ Հոս ահա Միաբանողաց Պատարագն՝ երկու ձեւով եւ այլեւայլ հնութեամբ։*

---

[1] Տպ. Հռոմ 1728, էջ 136—145, 147—151։

# ՊԱՏԱՐԱԳ ՄԻԱԲԱՆՈՂԱՑ

---

**A. ԱՌԱՋԻՆ ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ** — **B. ԵՐԿՐՈՐԴ ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ**

## Ա. ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

Ա.—¹*Ցորժամ քահանայն պատրաստէ զինքն առ ի պատարագել ըստ սովոր եկեղեցւոյն Հռոմայ, նախ ասէ զսաղմոսս զայս.* Իբրեւ սիրելի են։ Հաճեցար Տէր։ Խոնարհեցո Տէր։ Հաւատացի զոր եւ։ Ի խորոց կարդ.։ *Եւ ի վերջ իւրաքանչիւր սաղմոսի* Փառք։ *Եւ ապա կցուրդս այս.* Մի յիշեր Տէր զյանցանս իմ եւ մի զծնողաց իմոց, եւ մի լիներ վրէժխնդիր ի վերայ մեղաց իմոց։ — Տէր ողորմեա։ Քրիստոս ողորմեա։ Տէր ողորմեա։ — Հայր մեր որ յերկ.։ Մի տար զմեզ։ Պտ. Այլ փրկեա զմ.։ — Ես ասացի Տէր։ Պտ. Ես մեղայ քեզ։ — Դարձ Տէր։ Պտ. Եւ ունկնդիր լեր ի վերայ աղաչանաց ծառայից քոց։ — Եղիցի ողորմութիւն քո ի վերայ մեր։ Պտ. Որպէս յուսացաք մեք ի քեզ։ — Քահանայք քո զգեցցին զարդար.։ Պտ. Եւ սուրբք քո ցնծալով ցնծասցեն։ — Ի գաղտնեաց իմոց սուրբ արա զիս։ Պտ. Եւ յօտարէ պահեա զծառայս։ — Տէր լուր աղօթից իմոց։ Եւ աղաղակ իմ առ քեզ եկեսցէ։

Տէր ընդ ձեզ։ Եւ ընդ հոգւոյդ քում։

Զունկն ողորմութեան քո, բարեգութ Աստուած, խոնարհեցո յաղաչանս իմ, եւ շնորհօք Հոգւոյդ սրբոյ լուսաւորեա զսիրտ իմ, որպէս զի արժանի լիցիմ վայելչապէս ծառայել խորհրդոց քոց եւ զքեզ սիրել յաւիտենական սիրովն։

Աստուած որում յայտնի է ամենայն սիրտ, եւ մերկապարանոց բաղձանք ամենայն կամաց, եւ ոչինչ գաղտնի ծածուկ է առաջի ամենատես աչաց քոց. արդ սրբեա զխոր-

[B. Չէ։ C, էջ 64. *Աղօթք ասելիք մինչ քահանայն զգենու զքահանայական զարդս: Իբր լուանայ զձեռս ասասցէ.* Տուր Տէր զօրութիւն ձեռաց իմոց առ ի մաքրել յամենայն աղտից. զի մաքուր մտօք եւ մարմնով արժանի եղէց ծառայել քեզ։ — *Առ գլխարկն, մինչ դնի ի վերայ գլխոյն, ասասցէ.* Դիր Տէր զսաղաւարտ փրկութեան գլխոյ իմոյ, առ ի պատերազմել ընդդէմ յամենայն սատանայական յարձակմանց։ — *Առ շապիկն, յորժամ զգենու զնա.* Սպիտակացո զիս Տէր եւ մաքրեա զսիրտ իմ, զի արեամբ գառինն սպիտակացեալ, զմայլեցայց ուրախութեամբք մշտնջենաւորօք։ — *Առ գօտին, մինչ գօտեւորէ զինքն.* Շուրջպատեա զիս Տէր գօտեաւ ողջախոհութեան, եւ շիջո յինէն զամենայն դիւրութիւն ցանկութեան. զի մնասցէ յիս զօրութիւն ժուժկալութեան։ — *Առ բազկուրանն, մինչ դնէ ի վերայ պարանոցի.* Արժանի եղէց Տէր բառնալ զբազկուրանս լալոյ եւ ցաւոյ. զի ցնծութեամբ ընկալայց զվարձս աշխատանաց։ — *Առ ուրարն, մինչ դնէ ի վերայ պարանոցի.* Դարձո ինձ, Տէր, հայցեմ, զուրար անմահութեան, զոր կորուսի յանցանօք նախածնողաց. եւ թէպէտ անարժան մատչիմ առ սրբազան խորհուրդ քո, սակայն արժանացայց մշտնջենաւորի ուրախութեանն։ — *Առ նափորտն, կամ շուրջառն յորժամ ագանի,* Տէր որ ասացեր, Լուծ իմ քաղցր է եւ բեռն իմ փոքրոգի, շնորհեա զի զոյնս բառնալ կարիցեմ այնպէս, թէ կարող իցեմ գտանել զսուրբ շնորհս քո։ Ամէն։]²

---

Ա. ¹ A խմբագրութեան այս պատրաստութեան աղօթքները կան ճշգրիւ լատինականին մէջ Praeparatio ad Missam, pro opportunitate sacerdotis facienda. Սաղմոսներէն ետքը "Եւ ապա ասէ կցուրդս այս„ խրատագիրն ալ կայ լատինականին մէջ՝ Deinde repetitur Antiphona, նոյնպէս յարակիցներն ամբողջ՝ մանր մանր տարբերութեամբք ի հարկէ տեղ տեղ։ Նոյնպէս կան աղօթքները, որոնց սկիզբն է "Զունկն ողորմութեան քո, բարեգութ Աստուած, խոնարհեցո յաղաչանս իմ„ եւն։ Այս աղօթքներուն լատինական սկզբնաւորութիւքն են՝ Aures tuae pietatis եւն. Deus, cui omne cor patet, եւն. Ure igne (Հ. "բոցակիզեա„) sancti Spiritus renes nostros եւն, Mentes nostras... illuminet եւն. Adsit nobis եւն. Deus, qui corda fidelium sancti Spiritus illustratione docuisti եւն, եւ վերջապէս Conscientias nostras, quaesumus Domine, visitando purifica եւն։

² B չունի Պատրաստութեան աղօթքներս այս ձեւով եւ այստեղ։ Միւս կողմանէ Զգեստաւորման աղօթքները չկան այժմ A ի մէջ, որուն սկիզբէն թղթեր ինկած են։ Ասոր համար Պատրաստութեան աղօթքներու դիմաց դրինք Զգես-

Ա. ԽՄԲԳՐ.

Հուրդս որտից մերոց Հեղմամբ Հոգւոյդ սրբոյ, զի արժանաւորեսցուք կատարելապէս սիրել զքեզ եւ գովել։

Բացակիզեա Տէր զերիկամունս եւ զսիրտս մեր Հրով Հոգւոյդ սրբոյ, զի ողջախոհ մարմնով ծառայեսցուք քեզ եւ մաքուր սրտիւ հաճոյասցուք։

Զմիտս մեր լուսաւորեսցէ, աղաչեմք զքեզ Տէր, մխիթարիչ Հոգին սուրբ որ ի քէն ելանէ. եւ ուսուսցէ մեզ զամենայն ճշմարտութիւն ըստ խոստման միածնի Որդւոյ քո։

Լիցի ընդ մեզ, Տէր աղաչեմք զքեզ, զօրութիւն Հոգւոյդ սրբոյ, որ եւ անոխակալութեամբ իւրով մաքրեսցէ զսիրտս մեր եւ փրկեսցէ յամենայն ընդդիմութեանց։

Աստուած որ պայծառութեամբ սուրբ Հոգւոյն ուսուցեր զսիրտս հաւատացելոց, պարգեւեա մեզ այնմ Հոգւով զգիտութիւն ճշմարտիցն իմանալ եւ միշտ ուրախանալ ի նորին մխիթարութեանցն։

Հայցեմք ի քէն Տէր, մաքրեա զխիղճ մտաց մերոց այցելութեամբդ քո. որպէս զի Յիսուս Քրիստոս որդին քո Տէրն մեր եկեալ հանդերձ ամենայն սրբօք իւրովք գտանիցէ ի մեզ բնակութիւն ինքեան պատրաստեալ. որ ընդ։

Բ. ԽՄԲԳՐ.

## Բ. ԿԱՐԳ ՊԱՏԱՐԱԳԻ

Բ. — *Քահանայն զգեստաւորեալ առաջի սեղանոյն կանգնեալ ասէ.* Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ։ *Պտխ.* Առ Աստուած, որ

ԿԱՐԳ ՊԱՇՏՕՄԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՔԱՐ ՊԱՀԵԼՈՑ Ի ՊԱՏԱՐԱԳՄՆ։

*Քահանայն յորժամ մատուցանէ զպատարագն, մատչի առ սեղանն, ի մէջ որոյ կայով խոնարհեցուսցէ զգլուխն, կնքեսցէ զինքն*

---

տաւորմաններն ըստ C բնագրին, որոնք՝ ըստ այսմ՝ չէ թէ համապատասխանող են Aի դիմացը գրուածներուն, այլ անոնցմէ առաջ կ'ըլլային հագուելու ատեն։ Cի յոյն լեզուի խմբագրութիւնը կը անուանի ակնյայտնի եթէ համեմատենք հոս գրուածը վերը Լամբրոնեան "Համառօտութեան Պատարագի" սկիզբն եղածներուն հետ (տես վերն էջ 455—56), ուր կան նոյն աղօթքները, ինչպէս նաեւ մեր այժմու սովորական Պատարագին մէջ։ — C (էջ 65—7?) ունի "Նախապատրաստութիւն եւ Աղօթք յառաջ եւ յետ Պատարագին ըստ պարապութեան քահանային ասելի", Բազմաթիւ այս աղօթքներն ու Մաշտոցներն սովորական եւ ծանօթ եղած են յետոյ դարերուն, նաեւ մեր օրերն, բայց թարգմանութեան յոյն լեզուն յիշուելով եւ յարդարուելով։ Հմմտ. օրինակի համար "Նախապատրաստութիւն սրբոյ Պատարագի եւ աղօթք Գոհութեան" ի ժամագիրս, տպ. Վիեննա 1875, էջ 469—513, եւն. "Աղօթամատոյց ի պէտս քահանայից", Վիեննա. 1832, եւ նմաններ։

Բ. [3] C (էջ 136) այսպէս ունի սկիզբն՝ "Կարգ պսակելոյ համարձակութեամբ ի պատարագի։ Յորժամ հանդերձեալ է քահանայն զպատարագ մատուցանել, մտցէ առաջի սեղանոյն, եւ արարեալ զխոնարհութիւն, կացցէ ի միջոյ սեղանոյն. խաչակնքեսցէ զինքն առնելով զորս ի ձեռն յոյնս. Յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. Ամէն։ Եւ ասէ նոյնպէս. Խոստովանեսցուք Տեառն զի բարի է։ Սաղմոսն ասէ. Զի յաւիտեան է ողորմութիւն նորա։ Եւ ապա ասասցէ. Խոստովանիմ... եւ ծուլութեամբ. մե-

Ա. ԽՄԲԳՐ.

ուրախ առնէ զմանկ.: — Քհ. Օգնութիւն է մեզ յանուանէ: Պտ. Որ արար զերկինս եւ զերկիր:

Քհ. Խոստովանիմ առաջի Աստուծոյ ամենակալի, եւ երանելի կուսին Մարիամու Աստուածածնին, (Լուս. — եւ երանելի Միքայել հրեշտակապետին եւ սրբոյն Յովհաննու Կարապետին եւ սրբոց —) եւ երանելի առաքելոյն Պետրոսի եւ Պօղոսի եւ ամենայն սրբոց, եւ ձեզ, եղբարք, զի ծանր մեղուցեալ եմ յօրէնս Աստուծոյ իմոյ խորհրդով, բանիւ եւ գործով. մեղայ, մեղայ, մեծապէս մեղայ: Դարձեալ աղաչեմ զերանելի կոյսն Մարիամ եւ զամենայն սուրբս, եւ զձեզ եղբարք, աղօթեցէք վասն իմ:

*Սպասաւորքն ասեն.* Ողորմեսցի քեզ ամենակարողն Աստուած, եւ թողցէ զամենայն մեղս քո. եւ առաջնորդեալ հասուսցէ զքեզ ի կեանս յաւիտենից: — Քհ. Ամէն:

*Սպասաւորքն ասացեն.* Խոստովանիմ առաջի Աստուծոյ, եւ այլն: — Քհ. Ողորմեսցի ձեզ: — *Սպասաւորքն.* Ամէն:

Քհ. Զարձակումն եւ զթողութիւն ամենայն մեղաց մերոց շնորհեսցէ մեզ ամենակարող եւ ողորմած Տէրն: — Ամէն:

Քհ. Աստուած դու դարձեալ կեցուսցես զմեզ: Պտ. Ժողովուրդ քո ուրախ եղիցին ի քեզ: — Քհ. Ցոյց մեզ Տէր զողորմութիւն: Պտ. Եւ զփրկութիւն քո տուր մեզ: — Քհ. Տէր, լուր աղօթից իմոց: Պտ. Եւ աղաղակ իմ առ քեզ եկեսցէ:

Քհ. Տէր ընդ ձեզ: Պտ. Եւ ընդ հոգւոյդ:

Քհ. Բարձ ի մէնջ Տէր զամենայն անօրէնութիւնս մեր. որպէս զի ի սրբութիւն սրբոց մաքուր մտօք արժանի լիցուք մտանել Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

Գ. — *Եւ ելանէ ի սեղանն եւ խոնարհի[ի]. եւս ասէ զաղօթս ի ծածուկ.* Աղաչեմք զքեզ Տէր, զի վասն հանգստեան վարուց սրբոց քոց, որոց նշխարք նոցա աստ հան-

Բ. ԽՄԲԳՐ.

*Աշանաւ խաչին, պարզ եւ իմանալի կամ լսելի ձայնիւ ասասցէ.* Յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյ սրբոյ: Ամէն: Խոստովան եղերուք Տեառն զի բարի է: *Սպ.* Զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Քհ. *յոյժ խոնարհեալ ասէ.* Խոստովանիմ առաջի Աստուծոյ ամենակարողի, եւ երանուհւոյ միշտ կուսին Մարիամու, եւ երանելոյն Դոմինիկոսի հօրն մերոյ, եւ ամենայն սրբոց, եւ առաջի ձեր եղբարք, զամենայն մեղս զոր գործեալ եմ. քանզի մեղայ յոյժ խորհրդով, բանիւ, գործով եւ ծուլութեամբ. մեղայ Աստուծոյ. աղաչեմ զձեզ աղօթեցէք վասն իմ:

Ողորմեսցի ձեզ ամենակարող եւ ողորմածն Աստուած եւ զթողութիւն շնորհեսցէ ամենայն մեղաց ձերոց. ազատեսցէ զձեզ յամենայն չարէ, փրկեսցէ եւ հաստատեսցէ յամենայն գործս բարիս եւ առաջնորդեալ հասուսցէ զձեզ ի կեանս յաւիտենականս: — Պտխ. Ամէն:

Քհ. Զարձակումն եւ զթողութիւն շնորհեսցէ ձեզ ամենայն մեղաց ձերոց, ամենակարող եւ ողորմածն Աստուած: — Պտ. Ամէն:

Քհ. *ուղղեսցէ զինքն, եւ ասէ.* Օգնութիւն է մեզ յանուանէ Տեառն: Պտխ, Որ արար զերկինս եւ զերկիր:

*Մատչելով առ սեղանն դարձեալ խոնարհեալ ասէ.* Բարձ ի մէնջ Տէր... ի սրբութիւն սրբոց քոց...:

ղայ Աստուծոյ. մեղայ, աղաչեմ զձեզ աղօթել վասն իմ: Սարկաւագն ասէ. Ողորմեսցի քեզ, եւ այլն: Յետոյ կրկնեսցեն զխոստովանութիւն, եւ ասէ ժողովուրդն ասէ առաջի ձեր եղբարք եւ զձեզ, նոյն ասասցեն առաջի քո հայր եւ զքեզ: Որոյ ասելոյ ժողովուրդն ասասցէ. Ողորմեսցի ձեզ ամենակարողն Աստուած եւ զթողութիւն շնորհեսցէ ձեզ ամենայն մեղաց...: Սարկաւագն պատասխա-

նիսցէ. Ամէն: [Քհ.] Զարձակումն...: Սրկ. պտ. Ամէն: Եւ է մինչ խոստովանութեան եւ արձակման, ժողովուրդն ասասցէ զնոյն եւ ասասցէ. Օգնութիւն է մեզ յանուանէ Տեառն: Սրկ. պտ. Որ արար զերկինս եւ զերկիր: — Եւ մերձենալով առ սեղանն, դարձեալ խորին խոնարհեալ ասասցէ զաղօթս. Բարձ ի մէնջ „ եւն:

Ա. ԽՄԲԳՐ.

**գուցեալ է, Հաճեսցիս թողուլ զամենայն զմեղս իմ։**[4]

*Եւ ապա համբուրէ զսեղանն. եւ թէ հանդիսի տօն չիցի, առնու զբուրվառն ի սարկաւագէն եւ խնկէ զսեղանն։ Եւ ապա քահանայն յաջակողմն եւ սկսանի զժամամուտն ըստ պատշաճի աւուրն։ Եւ սկսի՝* **Տէր ողորմեա.** *Գ. [անգամ]։* **Քրիստոս ողորմեա.** *Գ. [անգամ։]* **Տէր ողորմեա.** *Գ. [անգամ։] Եւ ապա ի մէջ սեղանոյն՝ թէ պատշաճի աւուրն ասէ.*

**Փառք ի բարձունս Աստուծոյ եւ յերկիր խաղաղութիւն մարդկան բարեհաճութեան։ Գովեմք զքեզ. օրհնեմք զքեզ. երկիր պագանեմք քեզ. փառաւորեմք զքեզ, գոհանամք զքէն, վասն մեծի փառաց քոց. Տէր Աստուած թագաւոր երկնաւոր, Աստուած Հայր ամենակարող. Տէր Որդի միածին Յիսուս Քրիստոս։ Տէր Աստուած գառն Աստուծոյ եւ Որդի Հօր, որ բառնաս զմեղս աշխարհի, ողորմեա մեզ։ Որ բառնաս զմեղս աշխարհի ընկալ զաղաչանս մեր։ Որ նստիս ընդ աջմէ Հօր, ողորմեա մեզ։ Զի դու միայն սուրբ. դու միայն Տէր. դու միայն Բարձրեալ՝ Յիսուս Քրիստոս, ընդ սուրբ Հոգւոյն ի փառս Աստուծոյ Հօր։ Ամէն։**

Գ. — *Եւ դառնայ ի ժողովուրդն, եւ ասէ.* **Տէր ընդ ձեզ։** Պտ. **Եւ ընդ հոգւոյդ։**

**Աղօթեսցուք։** *Եւ ասէ աղօթս ըստ պատշաճի աւուրն, եւ զկնի Բ. աղօթս այլ զոր կամի։ Եւ կիսասարկաւագ թէ լինի՝ ընթեռնու զընթերցուածն. եւ թէ ոչ լինի՝ քահանայն կարդայ։ Եւ ասէ մսեդի եւ Ալէլուն ըստ պատշաճի աւուրն։ Եւ ապա սարկաւագն փոխէ զմիսալն յաջ թեւէն ի ձախն։ Եւ ի ծունր իջեալ առաջի սեղանոյն*

Բ. ԽՄԲԳՐ.

*Յետ ամենայն աղօթից համբուրէ զխորանն կնքելով զնա աջոյ բթամբն եւ կանգնեալ կնքեսցէ զինքն նշանաւ խաչին, գալով առ գիրքն, կցեալ ձեռօք առաջի սրտին սկսանի զժամամուտն։ Յետոյ* **Տէր ողորմեային** *հետ սպասաւորի. եւ յետոյ երթայ ի մէջ սեղանին ասէ (թէ ասելի իցէ.)*[5]

[6]**Փառք ի բարձունս Աստուծոյ եւ երկրի խաղաղութիւն մարդկան բարեկամաց. գովեմք զքեզ.... Տէր Որդիդ միածին...։ Քանզի դու միայն սուրբ... ընդ սուրբ Հոգւոյն ի փառս Աստուծոյ Հօր։ Ամէն։**

**Հաւատամ ի մի Աստուած, եւն։**

[[7]B չունի. C յաւելու՝ *Ապա յետ ասելոյն զաղօթն, զընթերցուածն եւ զպատասխանին հանդերձ Ալէլուայիւ կամ Մեսեդիկաւ, մատիցէ խոնարհեցուցեալ զգլուխն ի մէջ սեղանոյն, առ եղջիւր աւետարանին, ասելով.* **Սրբեա Տէր ի սրտի իմում, եւ ի շրթունս իմ, ի պատմել զսուրբ աւետարանս խաղաղութեան։** *Եւ կանգնեալ առաջի գրքոյն, շարակցեալ ձեռօք ի վերայ նորա, ասասցէ. Փխ.* **Տէր ընդ ձեզ։** *Եւ սպասաւորքն պատխ.*

---

Պ. [4] Այս փոքր աղօթքը, զոր չունին ո՛չ B եւ ո՛չ ալ C, եւ յատուկ է A խմբագրութեան, կայ ամփոփական լատինականին մէջ, որ կը պատուիրէ "Բարձ ի մէնջ„ աղօթքէն ետքը ձեռքերը կցելով խոնարհիլ սեղանին վրայ եւ ըսել նոյնը՝ Oramus te, Domine, per merita Sanctorum tuorum (Հոս խորանին մէջտեղ կը համբուրէ քհ.), quorum reliquiae hic sunt, et omnium Sanctorum, ut indulgere digneris omnia peccata mea. Amen.

[5] C "Աւարտեալ զաղօթս այս ("Բարձ ի մէնջ„), համբուրեսցի զսեղանն, կնքելով զնա նախ ի մէջն, աջով բթովն, եւ կանգնեալ կնքեսցէ զինքն նշանաւ խաչին եւ մատուցեալ առ գիրքն, կցեալ ձեռօք առաջի կրծոցն, սկսցէ զաղաչանսն պատարագի կամ զժամամուտն, որոյ ի վերջանալն՝ ասասցէ մի զկնի միոյ ընդ սպասաւորաց. Տէր ողորմեա։ Եւ ի աւել վերջնոյն՝ երթեալ առ մէջն սեղանոյն, ասասցէ (եթէ ասելի է.) Փառք ի բարձունս Աստուծոյ„ եւն։

[6] C ունի "Փառք ի բարձունս„ եւն մինչ. Bի համեմատ, միայն մէջը հինգ տեղ յաւելլով խրատագիրս թէ "Խոնարհեցուցանէ զգլուխն։„

Պ. [7] B չունի այս ամէն մասերը. բայց C ունի նոյները՝ որ կը համապատասխանեն Aի գիծերը դրուած կտորներուն մինչեւ "Հաւատամք„։ Աւասիկ Bի սիւնակին մէջ գրինք Cի ընթերցուածը փակագծով։

## Ա· ԽՄԲԳՐ·

տակ: ⁸Սրբեա զսիրտ իմ եւ զշրթունս, ամենակարող Աստուած, որ զշրթունս Եսայեայ մարգարէին հրացեալ կայծակամբ սրբեցեր. նոյնպէս զիս շնորհօք ողորմութեան քո մաքրեա. զի սուրբ աւետարանս վայելչապէս ընթեռնուլ կարողացայց:

⁹Եւ այս տակ առ պատարագողն. Հրամայեա Տէր օրհնութեամբ ասել: Պատարագողն պատասխանէ. Եղիցի Տէր ի սրտի քում եւ ի շրթունս քո. զի արժանապէս եւ վայելչաբար պատմեսցես զաւետարանն իւր:

Եւ տակ սարկաւ. Տէր ընդ ձեզ: Պտ. Եւ ընդ հոգ.: — Հետեւումն կամ Սկիզբն սրբոյ աւետարանիս ըստ Մատթէի, կամ Մարկոսի, կամ Ղուկասու, կամ Յոհաննու: Պատասխանեն, Փառք քեզ Տէր: Եւ կարդայ զաւետարանն եւ բերէ առ պատարագողն զի համբուրեսցէ:

Իսկ եթէ սարկաւագ ոչ լիցի, քահանայն փոխէ զգիրքն յաջմէն ի ձախն եւ տակ. Սրբեա զսիրտ: Եւ եկեալ ի մէջ սեղանոյն տակ. Եղիցի Տէր ի սրտի իմում: Գրած է. Տէր ընդ ձեզ: Պտ. Եւ ընդ հոգ.: Եւ ընթեռնու զաւետարանն եւ համբուրէ. եւ գայ ի մէջ սեղանոյն, թէ պատշաճ իցէ առնելն սիւանի: Հաւատամք ի մի Աստուած, Հայրն ամենակալ, յարարողն երկնի եւ երկրի, երեւելեաց ամենայնի եւ աներեւութից: Եւ ի մի Տէրն Յիսուս Քրիստոս յՈրդին Աստուծոյ միածին. եւ ի Հօրէ ծնեալ յառաջ քան զամենայն յաւիտեանս: Աստուած յԱստուծոյ. լոյս ի լուսոյ. Աստուած ճշմարիտ յԱս-

## Բ· ԽՄԲԳՐ·

Եւ ընդ հոգւոյդ քում: Եւ ասելով Հետեւումն կամ Սկիզբն սրբոյ աւետարանիս, եւ այլ, կնքեսցէ բթով աջոյ ձեռին զաւետարանն եւ զինքն իսկ ի ճակատն, ի բերան, եւ ի կուրծն. յետ այնորիկ մեծագունին նշանաւ խաչին, աջոյ ձեռամբն զինքն բոլոր կնքեսցէ, ի ճակատն առ կուրծս եւ առ ուսս: Իսկ սպասաւորքն պատասխանեսցեն, Փառք քեզ Տէր: Յետոյ հետեւի աւետարանն շարակցեալ ձեռօք որպէս առաջ, ընդ աւարտիլն նորա, մեծագունին նշանաւ խաչին դարձեալ կնքեսցէ զինքն, եւ առժամայն զաւետարանն բթով խաչակնքեալ, համբուրելով զնա ասասցէ. Աւետարանական ընթերցուածովքս ջնջեսցին յանցանք մեր: Յետոյ առ մէջն սեղանոյն, տարածեալ, վերացուցեալ եւ կցեալ զձեռս, ասասցէ (եթէ ասելի իցէ.) Հաւատամք ի մի Աստուած. եւ կցեալ ձեռօք հետեւեսցի: Մինչ ասէ՝ Աստուած, զգլուխն խոնարհեցուսցէ խաչին եւ զնոյն արասցէ, երբ ասէ՝ Յիսուս Քրիստոս, եւ Միշտ երկրպագի. ի վերջն Եւ ի կեանս այսպէս յաւիտենից, կնքեսցէ զինքն նշանաւ խաչին ի ճակատն առ կուրծս եւ առ ուսս: Հաւատամք ի մի Աստուած (խոնարհեցուցանէ զգլուխ) Հայրն ամենակարող, արարող երկնի եւ երկրի„ եւն:]

¹⁰Հաւատամ ի մի Աստուած, Հայր ամենակարողն, արարողն երկնի եւ երկրի... յԱստուծոյ ճշմարտէ... որ վասն մեր մարդկան... նաեւ խաչեցաւ վասն մեր ի ներքոյ Պոնտացւոյ Պիղատոսի... եւ յարեաւ յաւուր երրորդի ըստ գրեցելոց. եւ համբարձաւ յերկինս, նստաւ ընդ աջմէ Հօր. եւ դարձեալ

---

⁸ Այս աղօթքը հոս, զոր չունին ոչ B եւ ոչ C, կայ սովորական լատինականին մէջ. որ կը սկսի այսպէս՝ Munda cor meum, ac labia mea, omnipotens Deus, qui labia Isaiae prophetae calculo mundasti ignito, եւն՝ առանց տարբերութեան հայերէնէն:

⁹ Նոյնպէս սովորական լատինականին համեմատ է նախընթաց աղօթքին կցուող "Հրամայեա Տէր„ եւն եւ "Եղիցի Տէր ի սրտի քում„ եւն, որոնց վերջինը կայ նաեւ ի C. Աւելորդ կը համարինք խրատագրոց մէջ եղած մանր մունր տարբերութիւնքը մի առ մի նշանակել հոս, քանի որ ընդհանրապէս նոյն են անոնք լատինականին հետ:

¹⁰ C "Հաւատամքն„ աւելի A ի նման ունի քան B. այսպէս ունի C առ խօսքերը "ծնեալ եւ ոչ արարեալ, համագոյակից Հօր, որով ամենայն ինչ եղեւ.„ որմէ ետքը՝ "Որ յաղագս մեր մարդկան... էջեալ է յերկնից (աստ ծունր կրէ) եւ մարմնացաւ ի Հոգւոյն սրբոյ, ի Մարիամայ կուսէն, եւ մարդ եղեւ... եւ յարեաւ յաւուր երրորդի ըստ գրեցելոց (= B) եւ համբարձաւ յերկինս. նստաւ ընդ աջմէ Հօր եւ միւսանգամ գալոց է փառօք ի դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեան ոչ եղիցի վախճան: Եւ ի Հոգին սուրբ զՏէր եւ զկենդանարար, որ ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխէ. որ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ միշտ (աստ խոնարհեցուցանէ զգլուխ) երկրպագի եւ փառաւորի. որ խօսեցաւ մարգարէիւք: Եւ ի մի սուրբ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի: Խոստովանիմ զմի մկրտութիւն ի թողութիւն մեղաց: Եւ ակնեմ յարութեան մեռելոց: Եւ ի կեանս ապագայ յաւիտենից: Ամէն:„

Ա. ԽՄԲԱԳԻՐ.

տուածոյ ճշմարտէն, ծնեալ եւ ոչ արարեալ, համագոյակից Հօր, որով ամենայն ինչ եղեւ: Որ յաղագս մեր մարդկան եւ վասն մերոյ փրկութեան՝ իջեալ ի յերկնից եւ մարմնացաւ ի Հոգւոյն սրբոյ, ի Մարիամայ կուսէն. եւ մարդ եղեալ. նաեւ խաչեալ վասն մեր ի ներքոյ Պոնտացւոյ Պիղատոսի, չարչարեցաւ եւ թաղեցաւ. եւ յարեաւ յաւուր երրորդի որպէս եւ գրեալ է. ելեալ յերկինս նստաւ ընդ աջմէ Հօր: Եւ գալոց է միւսանգամ փառօք դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան: Եւ ի սուրբ Հոգին, Տէր եւ կենդանարար, որ ի Հօրէ եւ յՈրդւոյ բխի. որ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ ի միասին երկրպագի եւ փառաւորի. որ խօսեցաւ մարգարէիւք: Եւ ի մի սուրբ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի: Խոստովանիմ ի մի մկրտութիւն, ի թողութիւն մեղաց: Եւ սպասեմ յարութեան մեռելոց, եւ կենացն յաւիտենից: Ամէն:

Ե. — *Դառնայ առ ժողովուրդն եւ ասէ.* Տէր ընդ ձեզ: Եւ ընդ հոգւոյդ: *Դառնայ ի գիրքն եւ ասէ.* Աղօթեսցուք: *Եւ ասէ զմատուցման զաղօթսն: Եւ ապա ընծայէ զնշխարն մաղզմայովն.*[12] Ընկալ Տէր սուրբ Հայր ամենակարող եւ յաւիտենական Աստուած զանբիծ պատարագս զայս, զոր ես անարժան ծառայս քո մատուցանեմ քեզ Աստուծոյ իմոյ կենդանւոյ եւ ճշմարտի, վասն անթիւ մեղաց եւ յանցանաց եւ ծուլութեանց իմոց, եւ վասն ամենայն շրջակայիցս. այլ եւ վասն ամենայն հաւատացելոց քրիստոնէից կենդանեաց եւ մեռելոց. զի ինձ եւ նոցա օգտակար լիցի առ ի փրկութիւն, ի կեանս յաւիտենից: Ամէն:

*Դնէ զնշխարն ի վերայ գորպորալին եւ ջուր արկանէ ի սկիհն ասելով.* Աստուած որ զպատուական գոյացութիւն մարդկային ազգի սքանչելապէս արարեր եւ զարմանագոյն եւս նորոգեցեր. տուր մեզ ի ձեռն խորհրդոյ

Բ. ԽՄԲԱԳԻՐ.

գալոց է փառօք դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեանն ոչ լինիցի վախճան: Եւ ի Հոգին սուրբ, ի Տէր եւ ի կենդանարարն... բղխէ... եւ ի մի սրբուհի կաթողիկէ...: Խոստովանիմք զմի մկրտութիւն եւ ի թողութիւն մեղաց. եւ ակն ունիմք մեք յարութեան ընդ մեռելոց: Եւ ի կեանս ապագայ յաւիտենից: Ամէն:

[11] *Յետ որոյ դառնայ առ ժողովուրդն եւ ասէ.* Տէր ընդ ձեզ: *Պա.* Եւ ընդ հոգւոյդ: *Զկնի արտասացութեանն առեալ սկիհն վերայ եղեալ մաղզմայի, հանդերձ նշխարաւ ապա տացէ ընծայութեամբ բարձրացուցանելով մինչեւ ի սիրտն ասէ.* Ընկալ սուրբ Երրորդութիւն զնուէրս այս, զոր մատուցանեմք քեզ ի յիշատակ չարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ շնորհեա զի առաջի քոյ ելցէ եւ քեզ հաճոյացի. եւ ինձ եւ ամենայն հաւատացելոց գործեսցէ զփրկութիւն յաւիտենական:

[13] *Յետոյ դնէ ի վայր զսկիհն ի վերայ գորպորային, եւ նշխարքն առաջի սկիհոյն առանց մաղզմայի. եւ սկիհն ծածկէ դաստառակաւն:*

*Եւ ապա գնայ առ լուացումն ձեռաց եւ ասէ.* Լուացից ի մէջ անմեղաց զձեռս իմ եւ շուրջ եղէց զսեղանով քով Տէր. լսել զձայն օրհնութեան քո եւ պատմել զամենայն

Ե. [11] Խորատագիրքս այսպէս ունի C. "Յետ այսորիկ դառնայ ի ժողովուրդն ասելով. Փխ. Տէր ընդ ձեզ: Ստացողն ասէ. Եւ ընդ հոգւոյդ քում: Յետոյ ասէ՝ Աղօթեսցուք: Եւ օրհնելով զնշխարն. զոր մատուցանել կամի հանդերձ սկիհով, ասելով. Զի՞նչ տաց արիտուր Տեառն ընդ ամենայնի, զոր ետ ինձ: Եւ զսկիհն հանդերձ նշխարաւ, որ եդեալ կայ ի վերայ մաղզմային եւ առեալ երկոցին ձեռօք, ի վերայ բարձրացեալ [illegible] վերացուցանելով ասէ. Զբաժակ փրկութեան ընկալայց, եւ զանուն Տեառն կարդացից. Յետ այնորիկ մատուցանելով ասէ՝ Ընկալ սուրբ Երրորդութիւն զնուէրս զայս" եւն: Աղօթքս ճիշդ Bի համեմատ է:

[12] Այս աղօթքը, զոր չունին B եւ C, կայ լատինականին մէջ՝ Suscipe, sancte Pater, omnipoteus Deus, եւն եւն:

[13] C այսպէս ունի՝ "Առաջելոց այսպէս. (այսինքն աղօթիցն "Ընկալ" եւն, Ծան. 11), զսկիհն եդեալ է վերայ [illegible], զմաղզմանն [illegible] է վեր [illegible] է [illegible], եւ զնշխարն [illegible] նորին [illegible] եւ [illegible] զսկիհն: Եւ [illegible]

Ա· ԽՄԲԳԻ·

միութեան այսմ ջրոյ եւ գինւոյ աստուածութեանն նորա կցորդս լինել, որ մարդկութեան մերոյ հաճեցաւ լինել բաժանակից, Յիսուս Քրիստոս Որդին քո, որ ընդ.:[14]

*Եւ ապա զսկիհն մատուցանէ ասելով.*[15] Մատուցանեմ քեզ Տէր զբաժակս փրկութեան աղաչելով զգթութիւնդ քո, զի առաջի քո աստուածային մեծութեանդ վասն փրկութեան մերոյ եւ ամենայն աշխարհի ի հոտ անուշից ելանիցէ: Ամէն:

*Դնէ զսկիհն ի վերայ կորփորալին եւ ասէ.* Հոգւով խոնարհութեամբ եւ զղջացեալ սրտիւ ընկալեալ լիցուք ի քէն Տէր. եւ այնպէս եղիցի պատարագս մեր առաջի քո այսօր զի հաճոյ լիցի քեզ Տէր Աստուած մեր: *Ապա բարձրացուցանէ զձեռն եւ միաւորեալ խաչակնքէ ի վերայ նշխարին եւ բաժակին ասելով.*[17] Եկ ամենագործ ամենակարող Աստուած, օրհնեա † զպատարագս զայս նախապատրաստեալ սուրբ անուանդ:

*Զկնի օրհնէ խունկ եւ դնէ ի բուրվառ.*[18] Բարեխօսութեամբ երանելւոյն Միքայելի հրեշտակապետին կանգնելոյն ընդ աջմէ սեղանոյն խնկոցն, եւ ամենայն ընտրելոց իւրոց, զխունկս զայս հաճեսցի օրհնել † Տէրն ի հոտ անուշից ընդունել Յիսուսիւ Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

*Եւ խնկարկէ զընծայսն ասելով.* Խունկս այս առ ի քէն օրհնեալ ելցէ առ քեզ Տէր, եւ իջցէ ի վերայ մեր ողորմութիւն քո:

Բ· ԽՄԲԳԻ·

զսքանչելիս քո: Տէր սիրեցի զվայելչութիւն տան քոյ եւ զտեղի յարկի փառաց քոց: *Եւ ոչ ասելի:*

[16] *Յետոյ դառնայ առ սեղան կցեալ ձեռօք, յոյժ խոնարհեալ ասէ.* Հոգւով հեզութեան եւ զղջացեալ սրտիւ ընկալեալ լիցուք ի քէն Տէր. զի այնպէս եղիցի պատարագս մեր, զի ընդունելի լիցի քեզ այսօր, եւ հաճոյացի քեզ Տէր Աստուած մեր:

*Ընդ ահեկն սորին ուղղեցէ դառնալով առ ժողովուրդն ասասցէ.* Աղօթեցէք եղբարք զի իմ եւ ձեր պատարագն առ հասարակ եղիցի ընդունելի:

*Յաղագս Պրէֆացիօնից, եւն:*

---

[illegible] Լուացայց ի մէջ անմեղաց... (= B): [illegible]„

[14] Այս աղօթքս ալ չունին B եւ C, բայց կայ լատինականին մէջ՝ Deus, qui humanae substantiae dignitatem mirabiliter condidisti, եւն եւն:

[15] Նոյնպէս Aի յատուկ այս աղօթքը կայ լատինականին մէջ՝ Offerimus tibi, Domine, calicem salutis, եւն:

[16] Անկէ մինչեւ Պրէֆացիոնին սկիզբն այսպէս ունի C. "Յետ [illegible] Հոգւով հեզութեան... եւ հաճոյ եղիցի քեզ Տէր Աստուած մեր (ուստի = B): [illegible] "Աղօթեցէք եղբարք„. [illegible] Աղօթեցէք եղբարք, զի իմ եւ ձեր պատարագս առ հասարակ եղիցի ընդունելի առաջի Տեառն: [illegible] Տէր լուր աղօթից իմոց, եւ աղաղակ իմ առ քեզ եկեսցէ, [illegible] Աղօթեսցուք:„ — Անկէ ետքը կայ Պրէֆացիոնու մասին ու ընդհանուր խրատագիրը "Եւ ապա տարածեսցելովք ձեռամբք, ասէ զաղօթն կամ զաղօթս ծածուկս, որոց վերջացելոց, երբ հասանիցէ ի աւարտն, պարզ եւ իմանալի ձայնիւ ասասցէ. Ի յաւիտեանս յաւիտենից, հանդերձ յաւելու պրէֆացիոնիւ պատարագին, որպէս ի հետեւեալս:„ Ապ յաջորդէն Պրէֆացք Ծննդեան, Յայտնութեան եւն: Տես Հատ. Ե:

[17] Լատինականն՝ Veni, sanctificator omnipotens aeterne Deus, եւն: BC չունին:

[18] Լատինականն՝ Per intercessionem beati Michaelis archangeli, եւն: Նոյնպէս չունին այս եւ յաջորդքն՝ մինչեւ Պրէֆացները՝ BC, բայց Aի համաձայն է ամփոփական Լատինականին, որ ունի նոյնպէս խնկոց աղօթքները "Խունկս այս„ եւն, "Ուղիղ եղիցին„ եւն, "Վառեսցէ ի մեզ„ եւն: Խրատագիրքն ալ քիչ շատ նոյն են: Համեմատէ վերը Հռոմայեցւոց պատարագը:

Ա. ԽՄԲԳՐ.

*Ջկոյսր սեղանոյն խնկէ տանելով.* Ուղիղ եղիցին աղօթք։ Դիր Տէր պահապան բերանոյ։ Առ ի պատճառել զպատ.։ *Գ. տոնն յմսն տաս:*

*Եւ ապա տայ զխունկն ի սարկաւագն եւ նա ի ծունր իջեալ ծխէ ունելով ձախ ձեռամբ զմի նափորքին եւ աջոյ ձեռամբն խնկարկէ քահանային: Եւ քահանայն ասէ ի ծածուկ.* Վառեսցէ ի մեզ Տէր զհուր սիրոյն իւրոյ եւ զբոց յաւիտենական ըղձիցն։

*Եւ*[19] *թէ քարոզ լինի, ի ծունր իջեալ քարոզողն առաջի պատարագողին ասէ.* Հրամայեա Տէր բարեբանել։ *Պատարագողն ասէ.* Եղիցի Տէր ի սիրտ քում եւ ի շրթունս քո. զի արժանապէս եւ վայելչաբար պատմեսցես զբան իւր սուրբ յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն։

Զ. — *Եւ յորժամ կատարի քարոզն, սպասաւորն բերէ ջուր, եւ քահանայն լուանայ զծայր մատանցն ասելով.* Լուացայց ի մէջ անմեղաց զձեռս իմ եւ շուրջ եղէց զսեղ. *(ի յմսն:)* [20]Աղաչեմք զքեզ Տէր սուրբ Հայր ամենակարող եւ յաւիտենական Աստուած, այժմ ընդ ձեռացս լուացման՝ լուա զիմանալի հոգիս, մաքրեալ ի սուրբ մարմին եւ յարիւն միածնի քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Որդւոյ քո։

*Եւ ապա խոնարհի քահանայն առաջի սեղանոյն եւ ասէ.* Ընկալ սուրբ Երրորդութիւն զընծայս զայս՝ զոր մատուցանեմ քեզ ի յիշատակ չարչարանաց, յարութեան եւ համբարձման Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, եւ ի պատիւ երանելոյն Մարիամու Աստուածածնին եւ Յովհաննու Մկրտչին եւ սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի, եւ սրոց այսօր է յիշատակ, եւ ամենայն սրբոց, որպէս զի լիցի նոցա ի պատիւ եւ մեզ ի փրկութիւն. եւ նոքա վասն մեր հաճեսցին բարեխօսել յերկինս, որոց եւ մեք զյիշատակն առնեմք յերկրի Քրիստոսիւ Տերամբ մերով։ Ամէն։

*Համբուրէ զսեղանն: Դառնայ առ ժողովուրդն ասէ.* Աղօթեցէք վասն իմ եղբարք, զի իմ եւ ձեր պատարագս ընդունելի լիցի առաջի Աստուծոյ Հօր ամենակարողի։

*Շրջակայքն պատասխանեն ծածուկ.*[21]

Բ. ԽՄԲԳՐ.

[Վերն՝ էջ 481։]

[Տե՛ս էջ 481։]

[Տե՛ս էջ 482։]

[19] Ai յաւելուկ է Քարոզի համար սահմանուած մասս։

Զ. [20] "Աղաչեմք զքեզ Տէր„ եւն աղօթքս, որ յաւելուկ է Ai, չի նշանակուիր նաեւ սովորական լատինականին մէջ։ — Այս աղօթքը "Ընկալ սուրբ Երրորդութիւնն„ եւն, զոր ունին նաեւ B եւ C ուրիշ տեղ, հոս ունի սովորական լատինականն՝ Suscipe, sancta Trinitas, hanc oblationem, եւն։ Նոյնպէս աստ կցուած "Աղօթեցէք վասն իմ եղբարք„ եւն։

Ա· ԽՄԲԳՐ·

Ընկալցի Տէր զպատարագդ ի ձեռաց քոց առ ի գովութիւն եւ ի փառս անուան իւրոյ, առ ի յօգտակարութիւն մեր եւ ամենայն եկեղեցւոյ իւրում սրբոյ։ Ամէն։

Եւ ապա ասէ զծածուկ աղօթսն. եւ ապա զՊրեֆացն զսկսերն:

Է.²² — 1. Պրեֆաց ծննդեան Յիսուսի:
Ճշմարտապէս արժան եւ իրաւ է, ուղիղ եւ փրկական մեզ միշտ եւ յամենայն տեղիս գոհութիւն մատուցանել քեզ, Տէր սուրբ Հայր ամենակարող եւ յաւիտենական Աստուած։

Քանզի խորհրդով մարմնացելոյ Բանին նոր լուսոյ քոյոյ պայծառութեամբ զաչս մտաց մերոց լուսաւորեաց։ Զի մինչդեռ զԱստուած երեւելապէս ճանաչեմք, սովաւ ի սէր աներեւութիցն յափշտակեսցուք։

Եւ վասն այսորիկ ընդ հրեշտակս եւ ընդ հրեշտակապետս, ընդ աթոռս եւ ընդ տէրութիւնս եւ ընդ ամենայն զինուորութիւնս երկնային զօրացն երգեսցուք զօրհնութիւն փառաց քոց անվախճան ասելով։ — Ի մէջ կանոնին ասի ի Պատարագն Ը. օր. Հաղորդելով. եւ զամենասուրբ օրս (գիշերս) պատուելով, ի յորս անապական կուսութիւնն երանելոյն Մարիամու Աստուածածնին ծնաւ զփրկիչն աշխարհի. այլ եւ զյիշատակ սրբոցն պատուելով, նախ զայն փառաւորեալ միշտ կուսին Մարիամու ծնողին Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. նաեւ զերանելի առաքելոյն, եւ այլն:

Բ· ԽՄԲԳՐ·

Յաղագս Պրեֆացիոնից:

1. ²³Պրեֆացիոն ասելի ի ծննդեան Յիսուսի եւ հանապազ մինչեւ ի Յայտնութիւնն, այլ եւ ի պատարագս սրբոց եւ յաղագս Ը.օրէիցն (բաց ի Ը.երորդ օրէ Ը.օրէի սուրբ Յովհաննու առաքելոյն,) դարձեալ ի տօնի սրբազան անուան Յիսուսի, այլ եւս ի պատարագս սրբունոյ Մարիամու կուսին ի ծննդեանն մինչեւ ի մաքրութիւնն եւ ի նոյն տօնի Մաքրութեան. դարձեալ ի տօնի Մարմնոյն Քրիստոսի եւ հանապազ ի. Ը. օր, եթէ ոչ հանդիպեսցի տօն, որ ունէ զյատուկ պրեֆացիոն:

Յաւիտենական Աստուած։

Քանզի խորհրդով մարմնացելոյ բանին նոր լոյս քոյոյ պայծառութեամբ զաչս մտաց. . սովիմք յափշտակեսցուք ի սէրն աներեւութից։

Վասն որոյ ընդ հրեշտակս... երգեսցուք զերգս փառաց քոց անվախճան ասելով։

Ի մէջ կանոնին: Հաղորդելով, եւ զամենասուրբ գիշերս կամ օրս հանդիսացուցանելով, ի յոր անապական կուսութիւնն երանուհւոյ Մարիամու Աստուածածնին յայտնեաց այսմ աշխարհի զփրկիչն։ Այլ եւ պատուելով զյիշատակ նոյն փառաւորեալ միշտ կուսին Մարիամու, ծնողին Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Այլ եւ երանելի առաքելոց, եւ այլն։ Սոյն եւս ի

---

²¹ Հոս A ձեռագիրը լաւ աւանդուած պիտի չըլլայ, վասն զի անյարմար է "Շէլ-լայն պատասխանեն ծ-ծ--լ„ խրատագիրը։ Լատիներէնը կ'ըսէ "Սպասաւորն կամ շրջակայքն պատասխանեն. Ե— կամ ենփն ե-լ ֆ-հանայն։„ Վերջինս համար միայն կրնար ըլլայ "Ծածուկ„ աղօթելու խրատագիրը։ Պատասխանը ("Ընկալցի Տէր„ եւն) նոյն է լատիներէնին հետ։

Է. ²² Պրէֆացները մի առ մի դրուած են նաեւ ի C, որոնց ամէն մէկ փոքր տարբերութիւնը հոս յառաջ բերել մեր դիտած նպատակէն շատ հեռու է. բաց աստի նոյները կրնան տեսնուիլ տպագրութեան մէջ՝ 138բ—145բ։ Ընդհանրապէս խօսելով Cի մէջ Պրէֆացներու խրատագիրները երկար են եւ համեմատ Bի խմբագրութեան, իսկ բուն Պրէֆացներու բնագրի կարգն աւելի համաձայն է Aի։ Բնագիրն ալ՝ իբր որբագրեալ խմբագրութիւն՝ մանր մունր տարբերութիւններ ունի թէ A եւ թէ B բնագիրներէն, բայց ընդհանրապէս նոյն ըլլալով Bի հետ։

²³ C ալ ունի այս խրատագիրքն եւ Պրէֆացն, եւ այն՝ ճիշդ նոյն Bի խմբագրութեան հետ, մէկ երկու փոքր շեղում չհաշուելով։ Զոր օրինակ սկիզբը "Ճշմարտապէս եւ արժան եւ իրաւ„ եւն գրուած է նաեւ ի C ալ, ինչպէս ունի A, ուր Bի գրիչը համառօտեր է եւ սկսեր "Քանզի խորհրդով„ կարգէն։ Լատիներէնը կը սկսի. Vere dignum et justum est, aequum et salutare, tibi semper et ubique gratias agere. եւն։ Նոյնպէս կից՝ Infra actionem (տ. "ի մէջ կանոնին.„) Communicantes, et diem sacratissimum celebrantes, եւն։ Նոյնպէս կան լատինականին մէջ յաջորդ ամէն Պրէֆացները։

Ա. ԽՄԲԳՐ.

2. Պրէֆաց Յայտնութեան Տեառն Ը. օր առի. Յաւիտենական Աստուած։ Զի մինչ միածինն քո մարմնական բնութեամբ մերով երեւեցաւ, ի նոր լոյս անմահութեան իւրոյ վերստին նորոգեաց զմեզ։ Եւ վասն այսորիկ։ ի մէջ կանոնին Ը. օր առի. Հաղորդելով եւ զամենասուրբ օրս զայս հանդիսացուցանելով, յորս միածինն քո ի փառս քո եւ ընդ քեզ յաւէտակից, ճշմարիտ մարմնով բնութեան մերոյ յայտնապէս երեւեցաւ։ Այլ եւ պատուելով զյիշատակ սրբոյն։ Նախ զփառաւորեալ միշտ։

3. Պրէֆաց Աղցիցն, որ առի մինչեւ ի ծաղկազարդն. Յաւիտենական Աստուած։ Որ մարմնական պահօք զսկարութիւնս մեր բառնաս, զմիտս համբառնաս, զօրութիւնս պարգեւես եւ փոխարէնս Քրիստոսիւ Տերամբ մերով։ Որով զմեծ։

Բ. ԽՄԲԳՐ.

պատարագս սրբոց ի բոլոր Ը. օր, միայն յառաջին պատարագն առի. Զօրութ գիշերս հանդիսացուցանելով։

2. Յայտնութեան աւուրն եւ հանապազ. Ը. օր., եւս եւ ի պատարագս սրբոց ի կիրակի ի մէջ. Ը. օր առի. Յաւիտենական Աստուած։ Զի մինչ միածին Որդիդ քո... անմահութեան իւրոյ նորոգեաց զմեզ։ Վասն որոյ ընդ հրեշտակս։[24] ի մէջ կանոնին. Հաղորդելով, եւ զամենասուրբ օրս հանդիսացուցանելով, յոր Միածին Որդիդ քո ի փառս քո եւ ընդ քեզ յաւէտակից ի ճշմարիտ մարմնի բնութեան մերոյ յայտնապէս երեւեցաւ։ Այլ եւ պատուելով զյիշատակ Նախ փառաւորեալ միշտ կուսին Մարիամու ծնողին նոյնոյ Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Այլ եւ երանելի առաքելոց։

3. Պրէֆասիոն Աղցիցն, եւս ի բոլոր Ը. օրեքն, ի Զորեքշաբթի Մոխրոց եւ ի կիրակիս Քառասնորդաց, եւ ի տօնս սրբոց (որք ոչ ունին զյատուկ Պրէֆ.) մինչեւ ի կիրակին չարչարանաց Պրէֆասիոն. (եւ յաւուրս յարկից:) Յաւիտենական Աստուած։ Որ մարմնական պահօք ախտս զմոլութիւնս մեղաց, հանգստեան զմիտս, առատացուցանես զառաքինութիւնս, եւ շնորհես զվարձս Քրիստոսիւ Տերամբ մերով։ Որով զմեծութիւնդ գովեն։[25]

Բ.[26] ի կիրակէ չարչարանաց մինչեւ ի յընծայիս Տեառն նեղափակաքար եւ ի

---

[24] Այս թէ ի B եւ թէ յA համառօտիւ նշանակուած տունը լիակատար գրած է C այսպէս՝ "Վասն որոյ ընդ հրեշտակս եւ ընդ հրեշտակապետս, ընդ աթոռս եւ ընդ տէրութիւնս եւ ընդ ամենայն զինուորութիւնս երկնային զօրաց, երգեսցուք զերգս փառաց քոց, անվախճան ասելով։" Նոյնպէս յաջորդներուն մէջ ալ շատ բան՝ զոր A կամ B համառօտութեամբ միայն կը նշանակեն, C լիակատար գրած է կամ ճշդիւ կրկնած է ամէն անգամ որ պատահի։ Բնագիրը հոս ալ B-ի համեմատ ունի C.

[25] Հոս ալ C կը լրացընէ այսպէս "Որով զմեծութիւնդ քո գովեն հրեշտակք, երկրպագեն տէրութիւնք, սարսին իշխանութիւնք, երկինք եւ երկնից զօրութիւնք. եւ երանելի սերովբէք պարակցեալ ցնծութեամբ բարեբանեն զքեզ։ Ընդ որս եւ զբարբառս մեր հրամայեսցես ընդունել աղաչեմք, խոնարհ խոստովանութեամբ ասելով։" — Սակայն C կրկին ունի Աղցից Պրէֆացը, սա տարբերութեամբ որ բուն Պրէֆացիոնի բնագիրը բառ առ բառ նոյն է երկու բաժնին մէջ ալ. միայն խորագիրը փոխուած է. առաջին անգամ սահմանելով թէ "Ի Կիրակէն [illegible]. մինչեւ ի Կիրակի չարչարանաց արտաքսաբար" եւն բսուի. երկրորդին համար՝ "ի գլուխ պահոցն եւ առյապա մինչեւ ի կիրակի չարչարանաց արտաքսաբար, է [illegible] առի Պրէֆացիոն։"

[26] Այս ալ (Թիւ 3. Բ) ունի C սահմանելով թէ "Ի Կիրակիսն չարչարանաց եւ ծաղկազարդին, եւ ի յընծայիս Տեառն. եւ յերկոսին տօնս սրբոյ խաչին, եւ ի տօնս սրբոց ի մէջ այնր ժամանակի հանդիպողաց, եթէ զյատուկ ոչ ունիցին. առի Պրէֆացիոն"։ — Այս Պրէֆացն ալ կրկին անգամ տպագրուած է ի C, երկրորդին գլուխը դնելով սա խորագիրը՝ "ի կիւրակէէ չարչարանաց մինչեւ յընծայիս Տեառն արտաքսաբար, է [illegible], է [illegible]" (de tempore կոչուածներուն)։ A ունի նոյնն

Ա. ԽՄԲԳՐ.

4. *Պրէֆացիօ ի վիճիլէ Զատկին որ ասի մինչեւ Համբարձումն.* Ուղիղ եւ փրկական, զքեզ Տէր յամենայն ժամ փառաւորել, եւս առաւել յայսմ աւուր յորում զատիկ մեր զենաւ Քրիստոս. քանզի Նա է ճշմարիտ գառն, որ եբարձ զմեղս աշխարհի: Որ զմահ մեր՝ մահուամբն իւրով խափանեաց. եւ զկենդանութիւն յարութեամբն իւրով վերստին նորոգեաց: *Ի մէջ կանոնին ասի Ը. օր.* Հաղորդելով, եւ զամենասուրբ օրս յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ըստ մարմնոյ հանդիսացուցանելով, այլ եւ զյիշատակ սրբոյն պատուելով: Նախ զփառաւորեալ:

*Այլ ի մէջ կանոնին.* Արդ զայս Նուէրս սպասաւորութեան մերոյ, այլ եւ զամենայն ծառայից քոց, զոր մատուցանեմք քեզ, վասն այնոցիկ զորս հաճեցար վերստին ծնանել ի Ջրոյ եւ ի Հոգւոյն սրբոյ, շնորհելով նոցա զթողութիւն ամենայն մեղացն իւրեանց, աղաչեմք զքեզ Տէր:

5. *Պրէֆաց Համբարձմանն Ը. օր.* Քրիստոսիւ Տերամբ մերով: Որ յետ յարութեան իւրոյ յայտնապէս երեւեցաւ ամենայն աշակերտաց իւրոց. եւ մինչդեռ հայէին նոքա վերացաւ յերկինս. զի շնորհեսցէ մեզ հաղորդս լինել աստուածութեան իւրոյ: Եւ վասն այսորիկ ընդ Հր.: *Ի մէջ կանոնին Ը. օր.* Հաղորդելով եւ զամենասուրբ օրս զայս հանդիսացուցանելով, յոր Տէրդ մեր

Բ. ԽՄԲԳՐ.

*յերկուս տօնս խաչին եւ ի տօնս արքայ խաչին ժամանակի հանդիպելոց եւ յաւուրս լուրից, որք ոչ ունին զյատուկ Պրէֆասիօն:* Յաւիտենական Աստուած: Որ զփրկութիւն մարդկային ազգի ի փայտ խաչին կացուցեր. զի յորմէ մահն ելանէր, անտի եւ կեանքն պտղաբերեսցէ: Եւ որ փայտիւն յաղթէր, փայտիւն եւս եւ յաղթահարեալ լինէր Քրիստոսիւ Տերամբ մերով: Որով զմեծութիւնդ քո գովեն:

4. *Ցեռագայ Պրէֆէկսիօնն ասի ի մեծի շաբաթի սուրբ զատկի եւ ի բոլոր Ը. օրէքն. սակայն ի պատարագն շաբաթի ասի.* Յայսմիկ գիշերի: *Իսկ յաւուրն զատկի մինչեւ ի նոր կիրակին ներփակաբար՝* Յայսօր: *Իսկ նորա ի բոլոր ժամանակս զատկի.* Եւս առաւել յորում զատիկ մեր զենաւ Քրիստոս, *մինչեւ ի տօնն Համբարձմանն.* Ճշմարտապէս արժան եւ իրաւ է, ուղիղ եւ փրկական, զքեզ Տէր յամենայն ժամ փառաւորել, եւս առաւել յայսմ գիշերի կամ՝ յայս օր, յորում զատիկ մեր զենաւ Քրիստոս: Վասն զի Նա է ճշմարիտ գառն... զկենդանութիւնս մեր յարութեամբն իւրով նորոգեաց: Վասն որոյ ընդ Հրեշտակս: *Ի մէջ կանոնին.* Հաղորդելով, եւ զամենասուրբ գիշերս *այսպէս ասի ի շաբաթի սուրբ միայն, իսկ ի յայլ աւուրս՝* զամենասուրբ օրս՝ Յարութեան Տեառն մերոյ ըստ մարմնոյ հանդիսացուցանելով: Այլ [եւ] պատուելով զյիշատակ Նախ փառաւորեալ միշտ կուսին, եւն:[27]

Արդ զայս Նուէրս... այլ եւ ամենայն ընտանեաց քոց, զոր մատուցանեմք...: *Այսպէս ասի մինչեւ ի նոր կիրակին ներփակաբար:*

5. *Ի յաւուրն Համբարձմանն եւ ի բոլոր Ը. օր միայն ի յամենայն պատարագս, եւս ի տօնս սրբոց, որք ոչ ունին զյատուկ, ասի Պրէֆէկսիօն:* Քրիստոսիւ Տերամբ մերով: Որ յետ յարութեան իւրոյ յայտնապէս երեւեցաւ... զի արասցէ զմեզ հաղորդս աստուածութեան իւրոյ: Վասն որոյ ընդ Հրեշտակս: *Ի մէջ կանոնին.* Հաղորդելով, եւ զամենասուրբ օրս հանդիսացուցանելով, ի յոր Տէրն մեր

---

ուրիշ տեղ, տես վարը Պրէֆաց Թիւ 10, կամ Ծան. 30:

[27] C լիակատար դրած է հոս ալ՝ տողելով բոլոր սրբոց անունները (տես ճիշդ "Աւէք կեբայք"էն յառաջ եղածները,) զորոնք հոս չենք կրկներ: Տպ. էջ 140: Յետոյ (էջ 141) նոյն Պրէֆացը դարձեալ կրկնած է՝ բայց աւելի համառօտ՝ իբրեւ "Պրէֆացիօն ի զատկական ժամանակին յաւուրս լուրից, եւ ունից երից ընթերցուածոց:"

Ա. ԽՄԲԳԻ.

միածին Որդիդ քո զետեղացոյց զգոյացութիւն տկարութեանս մերում, զմիացեալն ընդ ինքեան նստոյց ընդ աջմէ փառաց քոց։ Այլ եւ զմիջնատակ։

6. Պրէֆաց ի վիճիլէ Պենտեկոստէին մինչեւ ի տօն Երրորդութեան. Քրիստոսիւ Տերամբ մերով։ Որ համբարձեալ ի վերոյ ամենայն երկնից եւ նստեալ ընդ աջմէ քումմէ, զխոստացեալ Հոգին սուրբ եհեղ այսօր ի վերայ որդեգրելոց։ Վասն որոյ ամենայն աշխարհ ցնծայ յաղագս համատարած ուրախութեան ընդ ոլորտս տիեզերաց։ Այլ եւ վերին զօրութիւնքն եւ հրեշտակական իշխանութիւնք երգեն զօրհնութիւն փառաց քոց անվախճան ասելով։ Ի մէջ կանոնին Ը. օր. Հաղորդելով եւ զամենասուրբ օրս Պենտեկոստէիս հանդիսացուցանելով, յորում Հոգին սուրբ ի հրեղէն լեզուս երեւեցաւ։ Այլ եւ զմիջնատակ սրբոցն պատուելով։

Արդ զայսնուէրս սպասաւորութեան մերոյ այլ եւ զամենայն ծառայից քոց, զոր մատուցանեմք քեզ վասն այնոցիկ զորս հաճեցար վերստին ծնանել ի ջրոյ եւ ի Հոգւոյն սրբոյ՝ շնորհելով նոցա զթողութիւն ամենայն մեղաց իւրեանց. աղաչ.։

7. Պրէֆացիօ Երրորդութեան. Յաւիտենական Աստուած։ Որ ընդ միածնի Որդւոյ քո եւ Հոգւոյդ սրբոյ՝ մի ես Աստուած եւ մի ես Տէր, ոչ միութեամբ միոյ անձին, այլ միութեամբ էութեան Երրորդութեանդ։ Զի զոր ինչ հաւատամք զքոյոց փառաց յայտնելովն քո, զնոյն եւ յՈրդւոյ քո եւ ի Հոգւոյդ սրբոյ, անզանազան եւ առանց բաժանման դաւանեմք։ Զի խոստովանելովն զճշմարիտ եւ զյաւիտենական Աստուածութիւնն, երկրպագեսցի ի յատկութիւն անձանցն միութիւն էութեան եւ համահաւասարութիւն մեծութեանն։ Զոր օրհնեն հրեշտակք եւ հրեշտակապետք, սերոբէք եւ քերոբէք, որք ոչ դադարեն հանապազ աղաղակել միաձայն ասելով։

8. Պրէֆաց Աստուածածնին. Յաւիտենից Աստուած։ Եւ զքեզ ի յաւետիք

Բ. ԽՄԲԳԻ.

միածին Որդիդ քո տեղակալեաց[28] զգոյացութիւն տկարութեանս մերոյ զինքեան միաւորեալն ընդ աջմէ փառաց քոց։ Այլ եւ պատուելով զմիջնատակ, նախ փառաւորեալ, եւն։ Ասի ի բոլոր Ը. օր, եւս ի տօնի սուրբ խաչին, եւ յայլ խորհրդանշիկ պատարագս, բաց ի պատարագաց ննջեցելոց:

6. Ի վիճիլի Պենտեկոստէի եւ յաւուրն եւ հանապազ ի բոլոր շաբաթն մինչեւ յաւուրն շաբաթի ներփակաբար, դարձեալ ի պատարագս ուխտաւորականս յաղագս Հոգւոյն սրբոյ, ի յորս թողանի բանն Այսօր։ — Քրիստոսիւ Տերամբ մերով։ Որ համբարձեալ ի վերոյ ամենայն երկնից եւ նստեալ ընդ աջմէ քո...։ Այլ եւ վերին զօրութիւնքն եւ հրեշտակական իշխանութիւնքն երգեն զերգս փառաց քոց անվախճան ասելով։ Ի մէջ կանոնին[29] Հաղորդելով եւ զամենասուրբ օրս Պենտեկոստէի... երեւեցաւ առաքելոցն ի հրեղէն լեզուս։ Այլ եւ պատուելով զմիջնատակ նախ փառաւորեալ, եւն։ Արդ զայսնուէրս սպասաւորութեան մերոյ, այլ եւ ամենայն ընտանեաց քոց, զոր մատուցանեմք քեզ, յաղագս այնոցիկ, զորս վերստին ծնանել հաճեցար...։ Աղաչեմք զքեզ Տէր։ Հանապազ ասի մինչեւ ի յետագայ շաբաթի աւուրն ներփակաբար:

7. Ի տօնի ամենասուրբ Երրորդութեան եւ ի բոլոր. Ը. օր մինչեւ ի հինգշաբթի աւուրն արտաքսաբար, այլ եւ ի տօնս սրբոց (եթէ ոչ ունիցին զյատուկ,) եւ ի պատարագս ուխտաւորականս յաղագս Երրորդութեան, դարձեալ ի տօն այլակերպութեան Յիսուսի ասի Պրէֆացիօն. Յաւիտենական Աստուած։ Որ ընդ միածնի Որդւոյ քո եւ կենդանարար Հոգւոյն սրբոյ՝ մի ես Աստուած եւ մի Տէր, ոչ ի միութեան միոյ անձին, այլ ի յԵրրորդութեան միոյ էութեան... զքոյոյ փառացդ... զնոյն եւ ի Հոգւոյն սրբոյ... խոստովանելով... երկրպագեսցի յատկութիւն անձանց... մեծութեան։ Զոր գովեն հրեշտակք... քերոբէք եւ սերոբէք...։

8. Պրէֆացիօն երանելոյն Մարիամու կուսին ասի ի տօնս նորա (բաց ի տօնէ

[28] C "Տեղաւորեաց զգոյացութիւն տկարութեանս մերոյ զմիացեալն ընդ ինքեան ընդ աջմէ փառաց իւրոց" եւն։ Լաւագոյն է A ի հետ "զետեղացոյց" եւն կարդալ։ Լատիներէնն է՝ Unitam sibi fragilitatis nostrae substantiam, in gloriae tuae dextera collocavit.

[29] Ըստ C ի՝ "Ասասցի միշտ մինչեւ ի հետեւեալ շաբաթն ներփակաբար միայն։" Աղօթքը լիակատար գրած է C՝ սրբոց անուանց յիշատակութեամբ եւն. (տես էջ 141—42։)

### Ա. ԽՄԲԳՐ.

*Աղօթք վասն կենդանեաց:*[33] Օրհնեա Տէր զծառայս քո և զաղախնայս քո և զամենայն շրջակայս, զորոց ճանաչես զհաւատն և զջերմեռանդութիւնն, յաղագս որոց մատուցանեմք քեզ, կամ որք մատուցանեն քեզ զպատարագս զայս գոհութեան վասն իւրեանց և վասն իւրոցն ամենեցուն, յաղագս ազատութեան հոգւոց իւրեանց, վասն յուսոյն փրկութեան և առողջութեան իւրեանց, հատուցանեն քեզ զուխտս իւրեանց յաւիտենականիդ Աստուծոյ կենդանւոյ և ճշմարտի:

*Ի մէջ կանոնին:* Հաղորդելով, և զյիշատակ սրբոյն պատուելով. Նախ զփառաւորեալ և զմիշտ կոյսին Մարիամու ծնողի Աստուծոյ և Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Նաև զերանելի առաքելոյն և մարտիրոսացն քոց, զՊետրոսի, Պօղոսի, Անդրէի, Յակոբայ, Յովհաննու, Թովմայի, Յակոբայ, Փիլիպպոսի, Բարթողիմէոսի, Մատթէոսի, Սիմոնի, Թադէոսի, Լինոսի, Կլէթի, Կլէմէնդոսի, Սիքստի, Կոռնելիոսի, Կիպրիանոսի, Լորէնցիոսի, Կրիզոկոնի, Յովհաննու, Պօղոսի, Կոզմայի, Դամիանոսի և զամենայն սրբոց քոց, որոց արդեամբքն և բարեխօսութեամբքն շնորհեսցես, զի յամենայնի սպառազինեալ լիցուք օգնականութեամբ քոյին պաշտպանութեամբդ Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

*Ի մէջ կանոնին.* Արդ զայս նուէր ապասաւորութեան մերոյ, այլ և զամենայն ծառայից քոց, աղաչեմք զքեզ Տէր, զի հաշտեցեալ ընկալցիս. և զամենայն աւուրս կենաց մերոց խաղաղութեամբ քո տնօրինեսցես, նաև ի յաւիտենական դատապարտութենէն զերծուսցես զմեզ և հրամայեսցես համարիլ ի հօտ ընտրելոց Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

Եւ աղաչեմք զի դու Աստուած հաճեսցիս զնուէրս զայս առնել յամենայնի, — *ասա Գ. խաչ նշան ի վերայ նշխարին եւ բաժակին,* — օրհնեալ †, սրբեալ †, հաստատեալ † բանաւոր և ընդունելի: Որպէս զի մեզ եղիցի — *ասա մին խաչ նշան ի նշխարին եւ մին ի բաժակին* — մարմին † և արիւն † Որդւոյ քո սիրելոյ Տեառն մերոյ Յիսուսի:

[33] Ինչպէս B, նոյնպէս C այս մասին մէջ որևէ խորագիր չունի մինչև "Գառն Աստուծոյ" (Հատ. ԺԲ) կամ Ճաշակումն, զոր իրեն տեղը կը նշանակենք:

### Բ. ԽՄԲԳՐ.

Օրհնեա Տէր զծառայս և զաղախնեայս քո *անուն* և *անուն*, և զամենեսեան՝ որք շուրջ կան զմեօք, որոց ճանաչես զհաւատս և զջերմեռանդութիւնս... վասն իւրեանց և իւրայոցն ամենեցուն... և վասն յուսոյ փրկութեան և յաջողման իւրեանց... ճշմարտի: Հաղորդելով, եւն:

Հաղորդելով, և զյիշատակ սրբոցն պատուելով, նախ փառաւորեալ միշտ կուսին Մարիամու ծնողին Աստուծոյ և Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Այլ և երանելի առաքելոց և մարտիրոսաց քոց, Պետրոսի և Պօղոսի..: Սիմոնի և Թադդէոսի, Լինոսի, Կլէթի, Կղէմէնթոսի, Սիքստոսի... Գրիզօգօնի, Յօհաննու և Պօղոսի, Կոզմայի և Դամիանոսի, և ամենայն սրբոց քոց... բարեխօսութեամբն... քոյին պաշտպանութեանդ նոյն Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

Արդ զայս նուէր... այլ և ամենայն ծառայից քոց...[34] խաղաղութեամբ քով տնօրինեսցես, և ի յաւիտենական դատապարտութենէ զերծուսցես զմեզ, և հրամայեսցես մեզ համարիլ ի հօտ ընտրելոց քոց Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

Եւ աղաչեմք զի զնուէրս զայս դու Աստուած հաճեսցիս[35] օրհնեալ †, սրբեալ †, հաստատեալ †, բանաւոր և ընդունելի, զի եղիցի մեզ մարմին †, և արիւն † սիրելւոյ Որդւոյ քոյ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

[34] C "այլ և ամենայն ընտանեաց քոց":

[35] C յաւ. եւս "Զի զնուէրս զայս հաճեսցիս առնել յամենայնի օրհնեալ" եւն:

Ա. ԽՄԲԳՐ.

*Աստ առնու զնշխարն ի ձեռն եւ ասէ.* Որ ի Նախնումն աւուր քան զչարչարանս իւր էառ զհացն ի սուրբ եւ ի պատուական ձեռս իւր, եւ համբարձեալ զաչս իւր յերկինս առ քեզ Աստուած ամենակարող Հայրդ իւր, եւ գոհանալով զքեզ, օրհնեաց †, — *ձախ ձեռամբն զնշխարն բռնէ եւ աջովն խաչ հանէ,* — եբեկ, ետ աշակերտաց իւրոց ասելով. Առէք եւ կերայք ի սմանէ ամենեքեան. քանզի այս է մարմին իմ։ *Աստ բարձրացուցանէ զմարմինն Քրիստոսի ի տես ժողովրդեանն. եւ դնէ վերայ զորպորային:*

*Եւ խոնարհեալ առնու զսկիհն Բ. ձեռօքն, զբոյթն եւ զցուցակն ի կից ունելով, ասէ.* Ըստ նմին օրինակի յետ ընթրեացն առեալ զամենամաքուր զբաժակս զայս ի սուրբ եւ ի պատուական ձեռս իւր եւ դարձեալ գոհացեալ, — *աստ զսկիհն ձախ ձեռամբն ունելով եւ աջովն օրհնէ. եւ դարձեալ առնու եւ բռնէ Բ. ձեռօքն մինչեւ Ուստի եւ Մեքն,* — օրհնեաց †, ետ աշակերտաց իւրոց ասելով. Առէք եւ արբէք ի սմանէ ամենեքեան. քանզի այս է բաժակ արեան իմոյ, Նորոյ եւ յաւիտենական ուխտի, խորհուրդ հաւատոյ, որ վասն ձեր եւ բազմաց հեղցի ի թողութիւն մեղաց։ Զայս քանիցս անգամ առնիցէք՝ ի յիշատակ իմ արասջիք։ *Աստ համբառնայ զսկիհն ի տես ժողովրդեանն, եւ ի վայր բերեալ դնէ ի վերայ զորպորային. եւ տարածէ զձեռն եւ ասէ.*

Թ. — Ուստի եւ մեք ծառայք քո, այլ եւ ժողովուրդ քո սուրբ, յիշատակողք նոյն Քրիստոսի Որդւոյ քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի երանելի չարչարանացն, նաեւ ի դժոխոց զյարութիւնն, այլ եւ յերկինս փառաւոր զհամբարձումն. եւ մատուցանեմք ամենապայծառ մեծութեանդ քո ի քոյոց պարգեւացդ ի տրոց։ *Աստ Գ. խաչ հանէ ի վերայ մարմնոյն եւ բաժակին, եւ չորրորդ ի վերայ մարմնոյն միայն եւ զ. Ե.ն ի վերայ բաժակին:* Զպատարագս † մաքուր, զպատարագս սուրբ †, զպատարագս անբիծ †, զհացս † սուրբ յաւիտենականն կենացն, եւ զբաժակս † մշտնջենաւոր փրկութեան։

Ի վերայ որոց քաղցր եւ պայծառ դիմօք հայել հաճեսջիս եւ ընդունել, որպէս հաճեցար ընդունել զնուէրն Աբէլի մանկանն քո արդարոյ եւ զպատարագն նահապետին մերոյ Աբրահամու եւ զսուրբ նուէրն եւ զան-

35 C "փրկութեան մշտնջենաւորի"։

Բ. ԽՄԲԳՐ.

Որ ի Նախնումն աւուր քան զչարչարանս իւր էառ զհացն... զաչս իւր ընդ երկինս... օրհնեաց †, եբեկ, եւ ետ աշակերտաց իւրոց ասելով. Առէք կերայք ի սմանէ ամենեքեան. քանզի այս է մարմին իմ։ Ըստ նմին օրինակի, եւն։

Ըստ նմին օրինակի յետ ընթրեացն առեալ զամենամաքուր բաժակս այս ի սուրբ եւ ի պատուական ձեռս իւր, դարձեալ գոհութիւնս քեզ մատուցանելով, օրհնեաց † եւ ետ իւրոց աշակերտացն ասելով. Առէք եւ արբէք ի դմանէ ամենեքեան. քանզի այս է բաժակ արեան իմոյ նորոյ եւ յաւիտենական կտակի, խորհուրդ հաւատոյ, որ վասն ձեր եւ վասն բազմաց հեղցի ի թողութիւն մեղաց։ Զայս քանիցս անգամ առնիցէք, արասջիք առ իմոյ յիշատակի։

Ուստի եւ մեք ծառայք քո, այլ եւ ժողովուրդ... նոյնոյ Քրիստոսի Որդւոյ քո Տեառն մերոյ... նաեւ ի դժոխոց յարութեանն, այլ եւ յերկինս փառաւորեալ համբարձմանն, մատուցանեմք... ի քոյոց պարգեւաց եւ տրոց զընծայս † մաքուրս, զընծայս † սուրբս, զընծայս † անբիծս, զհացս † սուրբս յաւիտենական կենաց եւ զբաժակ փրկութեան մշտնջենաւոր։[35]

Ի վերայ որոյ քաղցր... մանկան քոյ... եւ զանբիծ ընծայն զոր մատոյց քեզ գերագոյն քահանայապետն[36] քո Մելքիսեդեկ։

36 C "գերագոյն քահանայն քո", համաձայն Ա.ի։

Ա· ԽՄԲԳՐ·

բեն պատարագն զոր մատոյց քեզ գերագոյն քահանայն քո Մելքիսեդեկ,

Ժ· — *Այստ խոնարհի քահանայն գլխ. ձեռն կից ունելով:* Եւ արդ խոնարհեալ աղաչեմք զքեզ ամենակարող Աստուած, հրամայեա նուիրել զսա ձեռամբ հրեշտակի քո ի վերայ բարձրագոյն սեղանոյ քո, առաջի աստուածային մեծութեանդ քո: *Այստ ուղղի, համբուրէ զսեղանն եւ ասէ.* Զի որք ի հաղորդութենէ այսմ սեղանոյս ճաշակեսցուք, — *աստ Ա. խաչ հանէ ի վերայ մարմնոյն եւ Ա. խաչ ի վերայ սկիհոյն,* — զամենասուրբ մարմին † եւ զարիւն † Որդւոյ քո ամենայն երկնային օրհնութեամբ †, — *աստ յիւր երեսն խաչ հանէ,* — եւ շնորհօք լցցուք Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

*Յիշատակ ննջեցելոց.* Յիշեա Տէր զծառայս եւ զաղախնայս, որք յառաջեցին քան զմեզ նշանաւ հաւատոյ, եւ ննջեն ի քուն խաղաղութեան: *Այստ յիշէ զննջեցեալսն զոր կամի:* Նոցա եւ ամենեցուն ի Քրիստոս հանգուցելոյն աղաչեմք զքեզ Տէր, շնորհեա զտեղի զովացման լուսոյ եւ խաղաղութեան Քրիստոսիւ: — *Այստ բախէ զկուրծս իւր եւ ասէ[ա՛ս] մի բարձր ասէ.* Մեզ եւս մեղաւորացս քոց ծառայիցս յուսացելոցս ի բազում ողորմութիւնս քո մասն ինչ եւ ընկերակցութիւն հաճեսցիս պարգեւել, ընդ սրբոց առաքելոյն քոց եւ մարտիրոսացն, ընդ Յովհաննու, Ստեփաննոսի, Մատաթիայ, Բառնաբայ, Իգնատիոսի, Աղեքսանդրու, Գրիգորի Լուսաւորչին, Մարկեղինոսի, Պետրոսի, Փելիցիտաթէ, Պերպէտուայ, Ագաթայ, Լուցեայ, Անկնէզի, Ցեցիլիայ, Անաստասիայ: Եւ ընդ ամենայն սրբոց քոց, ընդ որոց յընկերակցութիւն ընկալ զմեզ աղաչեմք զքեզ, ոչ յաղագս մերոյ արժանաւորութեան, այլ ըստ քո բազմագեղ ներողութեանդ Քրիստոսիւ Տերամբ մերով: Որով զայս ամենայն բարիս միշտ ստեղծես Տէր, — *աստ Գ. խաչ հանէ ի վերայ մարմնոյ եւ արեանն ասելով,* — սրբես †, կենդանացուցանես †, օրհնես † եւ շնորհես մեզ: *Իսկ այսպէս համբոյ զսկիհն եւ մարմնովն Գ. խաչ հանէ ի վերայ սկիհոյն ասելով.* Նովաւ † եւ ընդ նովին † եւ ի նմա †, — *աստ Բ. անգամ խաչ հանէ մարմնովն ի մէջ իրերաց եւ սկիհոյն եւ ասէ,*

Բ· ԽՄԲԳՐ·

Եւ արդ խոնարհեալքս աղաչեմք... ձեռօք սուրբ հրեշտակին քո... առաջի աստուածային փառաց քոց:[37] Զի որք ի հաղորդութենէ սեղանոյս այսր ճաշակեսցուք զամենասուրբ մարմին † եւ զարիւն † Որդւոյ քոյ ամենայն երկնային օրհնութեամբ † եւ շնորհօք քոյ լցցուք. նոյն Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

Նաեւ յիշեա Տէր զծառայս քո եւ զաղախնայս քո, որք յառաջեցին քան զմեզ նշանաւ հաւատոյ. [— Բառերը մ'ինկած է ի B. կը լրացուին ըստ C —[38]] եւ ննջեցին ի քուն խաղաղութեան, *անուն եւ անուն.* Նոցա եւ ամենեցուն ի Քրիստոս հանգուցելոց, աղաչեմք զքեզ, շնորհեա զտեղի զովացման, լուսոյ եւ խաղաղութեան, նոյն Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն: (C) Այլ եւ մեզ մեղաւորաց քոյոց ծառայիցս յուսացելոցս...: ընդ սրբոց առաքելոց քոց եւ մարտիրոսաց... Մատաթեայի... Աղեքսանդրի, Մարկեղինոսի, Պետրոսի, Փելիսիթայի, Փերփէթուայ, Ագաթայ, Լուցիայ, Անգնէթի, Սիսիլեայ, Անաստասեայ, եւ ամենայն սրբոց քոց, ընդ որոց վիճակակցութիւնն ընկալ զմեզ, աղաչեմք զքեզ, ոչ յաղագս մերոյ ինչ արժանաւորութեան, այլ ըստ քոյոյ բազմապէս ներողութեանդ, Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

(C) Որով զբարիս զայս ամենայն Տէր միշտ ստեղծես, սրբես †, կենդանացուցանես †, օրհնես † եւ շնորհես մեզ: Նովաւ † եւ ընդ նմա † եւ ի նմա †, է՛ քեզ Աստուծոյ Հօր ամենակարողի, ի միութեան Հոգւոյն սրբոյ, ամենայն փառք եւ պատիւ: Ի յամենայն յաւիտեանս յաւիտենից: Ամէն: Աղօթեսցուք, եւն:

---

Ժ. [37] C "Եւ արդ խոնարհեալքս աղաչեմք զքեզ ամենակարող Աստուած, հրամայեա զայսոսիկ բերել ձեռօք սրբոյ հրեշտակի քոյ ի բարձրագոյն սեղան քո, առաջի աստուածային փառաց քոց" եւն: Կից տողերուն մէջ C "սեղանոյս այսորիկ" եւ "...շնորհօք լցցուք" եւն:

[38] Տես C, էջ 149, Սիւն Բ, տող 10 մինչեւ էջ 150, Սիւն Ա, տող 24:

Ա. ԽՄԲԳԻՐ.

— է քեզ Աստուծոյ Հօր ամենակարողի ի միութիւն Հոգւոյդ սրբոյ ամենապատիւ եւ փառք, — *ասա աջոյ ձեռամբն բռնէ զմարմինն ի վերայ սկիհոյն եւ ձախ ձեռամբն բարձրացուցանէ զսկիհն ասելով ի ձայն,* — ի յամենայն յաւիտեանս յաւիտենից: Պտ. Ամէն:

ԺԱ. — Աղօթեսցուք: Փրկական հրամանաւն յորդորեալ եւ աստուածային կացուցմամբն կերպացեալ համարձակիմք ասել. Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի անուն քո, եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս եւ յերկրի: Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր. թող մեզ զպարտս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց. եւ մի տար զմեզ ի փորձութիւն: Պտ. Այլ փրկեա զմեզ ի չարէ: Քհ. Ամէն.

ԺԲ. — *Առնու զմաղզմայն ի ձեռն եւ ասէ զաղօթս ի ծածուկ.* Փրկեա զմեզ, Տէր, աղաչեմք զքեզ յամենայն չարեաց, յանցելոյն, յայժմուս եւ յառաջիկայէն, բարեխօսութեամբ երանելւոյն եւ փառաւորեալ եւ միշտ կուսին Մարիամու Աստուածածնին եւ երանելի առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի, Անդրէի եւ ամենայն սրբոց քոց: *Ասա մաղզմայովն տեառնագրէ զինքն ասելով.* Տուր † մեզ մարդասէր, զխաղաղութիւն յաւուրս մեր, զի օգնականութեամբ ողորմութեան քո զերծեալ լիցուք ի մեղաց եւ խաղաղացեալք յամենայն խռովութեանց:

*Ասա առնու զմարմինն մաղզմայովն, բանայ զսկիհն եւ բաժանէ զմարմինն ընդ մէջ ի վերայ սկիհոյն, եւ զմասն որ մնայ ի ձախոյ ձեռն դնէ ի մաղզմայն, եւ զմասն որ յաջոյ ձեռինն՝ դարձեալ բաժանէ յ. Բ.ս, եւ զմինն դնէ ընդ առաջնոյն եւ զմիւսն ունելով յաջոյ ձեռինն ի վերայ մաղզմային եւ ասասցէ.* Նոյն տէրամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ Որդւով քով, որ ընդ քեզ կենդանի է եւ թագաւորէ ի միութիւն Հոգւոյդ սրբոյ Աստուած: *Ասա զմասն որ է յաջոյ ձեռինն՝ բռնէ ի վերայ սկիհոյն եւ զսկիհն փոքր մի բարձրացուցանէ ասելով.* ի յամենայն յաւիտեանս յաւիտենից: Պտ. Ամէն:

*Եւ բանանայն խաչակնքէ զսկիհն երիցս մասամբն որ ի ձեռինն է եւ ասէ.* Խաղաղութիւն † Տեառն եղիցի միշտ † ընդ ձեզ †: Պտ. ընդ հոգւոյդ քում:

*Ասա զմասն որ ի ձեռն է՝ արկանէ ի սկիհն ասելով.* Խառնումն այս ամենասուրբ

Բ. ԽՄԲԳԻՐ.

Աղօթեսցուք: Փրկական հրամանաւն յորդորեալք եւ աստուածային կացուցմամբն ուսեալք համարձակիմք ասել. Հայր մեր...: Զհաց մեր հանապազորդ [— Հոս կը դնէ դուրջեալ B —] տուր մեզ այսօր...: Եւ մի՛ տանիր զմեզ ի փորձութիւն: Պտ. Այլ փրկեա զմեզ ի չարէ: Պտ. Ամէն:

Փրկեա զմեզ, Տէր, աղաչեմք զքեզ յամենայն չարեաց, յանցելոյն եւ յայժմուս եւ յառաջիկայէն, եւ բարեխօսութեամբ երանուհւոյ եւ փառաւորեալ միշտ կուսին Մարիամու Աստուածածնին եւ երանելի առաքելոց քոց Պետրոսի եւ Պօղոսի եւ Անդրէի եւ ամենայն սրբոց: Տուր մեզ... ի յաւուրս մեր... յամենայն խռովութենէ: Նոյն Տէրամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ Որդւով քով, որ ընդ քեզ կենդանի է եւ թագաւորէ ի միութիւն Հոգւոյն սրբոյ Աստուած՝: Ի յամենայն յաւիտեանս յաւիտենից: Պտ. Ամէն:

Խաղաղութիւն † Տեառն եղիցի † միշտ ընդ † ձեզ: Պտ. Եւ ընդ հոգւոյդ քում: Գառն Աստուծոյ, եւն:

Ա. ԽՄԲԳՐ.

մարմնոյ եւ արեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի մեզ ճաշակողացս եղիցի ի կեանս յաւիտենականս։ Ամէն։

*Եւ ասէ Գ. անգամ.* Գառն Աստուծոյ որ բառնաս զմեղս աշխարհի, ողորմեա։ Գառն Աստուծոյ որ բառնաս զմ.։ Գառն Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի, տուր մեզ զխաղաղութիւն։

*Ապա խոնարհի եւ ասէ զաղօթս ծածուկ.*[41] Տէր Յիսուս Քրիստոս, որ ասացեր առաքելոց քոց՝ զխաղաղութիւն զիմ տամ ձեզ, զխաղաղութիւն իմ թողում ձեզ. մի հայիր ի մեղս իմ, այլ ի հաւատս եկեղեցւոյ քո. եւ զնա ըստ կամաց քոց խաղաղացուցանել, միաւորել հաճեսցիս, որ կենդանի ես եւ թագաւորես։

ԺԳ. — *Ապա ողջէ եւ համբուրէ զսեղանն, ողջոյն տայ սպասաւորին եւ ասէ.* Խաղաղութիւն ընդ քեզ։ *Պա.* Եւ ընդ հոգւոյդ քում։ *Դարձեալ խոնարհի եւ ասէ.* Տէր Յիսուս Քրիստոս, Որդի Աստուծոյ կենդանւոյ. որ կամաւ Հօր եւ գործակցութեամբ Հոգւոյն սրբոյ մահուամբ քո կեցուցեր զաշխարհս, փրկեա զիս ի ձեռն այսմ ամենասուրբ մարմնոյ եւ արեան քո յամենայն անօրէնութեանց իմոց եւ յամենայն չարեաց, եւ հնազանդեցո զիս միշտ պատուիրանաց քոց, եւ մի երբեք թողցես ի քէն բաժանիլ, որ կենդանի ես եւ թագաւորես։

[43]Ճաշակումն մարմնոյ քո Տէր Յիսուս Քրիստոս զոր ես անարժանս համարձակիմ ճաշակել, մի լիցի ինձ ի դատաստան եւ ի դատապարտութիւն. այլ վասն գթութեան քո օգտակար լիցի ինձ առ ի պահպանութիւն մտաց եւ մարմնոյ եւ դեղ բժշկութեան. որ կեաս։

[44]*Ապա առնու զմաղզմայն հանդերձ մարմնովն Քրիստոսի եւ ասէ.* Զհաց երկնից առից եւ զանուն Տեառն կարդացից։ *Զկնի այսմ ասէ Գ. անգամ.* Տէր չեմ արժանի

Բ. ԽՄԲԳՐ.

[Տե՛ս քիչ մը վերը[39]։]

Գառն Աստուծոյ ...տուր մեզ զխաղաղութիւն։ *Յորժամ վասն ննջեցելոց լինի պատարագն.*[40] Գառն Աստուծոյ, որ բառնաս զմեղս աշխարհի, տուր նոցա զհանգիստ։ (Կրկին անգամ։) Գառն Աստուծոյ, որ բառնաս զմեղս աշխարհի, տուր նոցա զյաւիտենական հանգիստ։

Խառնումն այս ամենասուրբ մարմնոյ եւ արեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եղիցի ինձ եւ ամենեցուն ճաշակողաց առողջութիւն հոգւոյ եւ մարմնոյ եւ փրկական պատրաստութիւն առ ի արժանաւորիլ եւ ընդունել զկեանս յաւիտենականս։ Նոյն Քրիստոսիւ Տերամբ մերով։ Ամէն։

Տէր Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ, որ կամաւ Հօր եւ գործակցութեամբ Հոգւոյն սրբոյ, մահուամբ քով կեցուցեր զաշխարհս. փրկեա զիս ի ձեռն այսմ[42] ամենասուրբ մարմնոյ եւ արեան քո յամենայն անօրէնութեանց եւ յամենայն չարեաց, եւ հնազանդեցո զիս միշտ պատուիրանաց քոց, եւ ի քէն երբեք ոչ թողցես անջատիլ։ Որ կենդանի ես եւ թագաւորես ընդ նոյնում Աստուծոյ Հօր եւ Հոգւոյն սրբոյ Աստուած ի յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։

Մարմին եւ արիւն Տեառն մերոյ, եւն։

---

ԺԲ. [39] C ալ Bի համեմատ է հոս չունենալով “Խառնումն„ եւն, այլ կցելով “Գառն Աստուծոյ„ եւն, եւ յետոյ “Խառնումն այս„ եւն։

[40] C “Իսկ վասն ննջեցելոց, ասի այսպէս։„

[41] Այս աղօթքը, զոր չունին BC, կայ լատինականին մէջ այստեղ։

ԺԳ. [42] Նաեւ C այսպէս “այսմ„՝ սխալ գործածութեամբ։

[43] Աս ալ, զոր չունին B եւ C, լատինականին համեմատ է՝ Perceptio Corporis tui, Domine Jesu Christe, quod ego indignus sumere praesumo, եւն։

[44] Նոյնպէս լատինականին համեմատ՝ Panem caelestem accipiam եւն, եւ Domine, non sum dignus, եւն։ BC չունին այս ամէնը։

Ա. ԽՄԲԳՐ.

եթէ ընդ յարկաւ իմով մտցես. այլ սոսա բանիւ միայն եւ բժշկեսցի հոգի իմ։

*Եւ ապա տեառնագրէ զհացն մարմնովն եւ ասասցէ.* Մարմին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պահեսցէ զհոգի իմ ի կեանս յաւիտենականս։

*Եւ ապա ճաշակէ զմարմինն պատկառով. եւ թէ իր ինչ մնասցէ ի մաղզմայն կթամբն սրբէ ի սկիհն, եւ առնու զսկիհն ի ձեռն եւ ասէ.*[45] Զինչ հատուցից Տեառն վասն ամենայնի զոր ետ ինձ. զբաժակ փրկութեան ընկալայց եւ զանուն Տեառն կարդացից։ Օրհնելով կարդացից առ Տէր, եւ ի թշնամեաց իմոց ապրեցայց։

*Խաչակնքէ զինքն սկիհովն.* Արիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պահեսցէ զհոգի իմ ի կեանս յաւիտենից։

*Եւ ապա ըմպէ զարիւնն, եւ զայլ յաջակողմն սեղանոյ, լուանայ զսկիհն գինով եւ ըմպէ: Եւ ապա զծայր մատանցն գինով եւ ջրով ի սկիհն լուասցէ. եւ զայս ասէ ի ծածուկ:* Զոր բերանով ճաշակեցաք, Տէր, մաքուր մտօք ըմբռնեսցուք. զի պատուական քոց պարգեւացս այսոցիկ խորհրդաբար ճաշակելոյ ի մէնջ եղիցի մեզ դեղ կենաց յաւիտենից։

[46] Մարմին քո Տէր, զոր ճաշակեցի, եւ արիւն քո զոր ըմպեցի, միաւորեսցի ի միտս իմ. եւ շնորհեա զի մի մնասցէ յիս աղտ մեղաց, զոր մաքուր եւ սուրբ խորհուրդ քո յագեցուցին զիս, որ կենդ[անի ես եւն.]

ԺԴ. — *Աստ փոխէ զգիրքն յաջ կողմն, եւ ասէ զհաղորդութիւն ըստ պատշաճի աւուրն: Եւ դառնայ առ ժողովուրդն եւ ասէ.* Տէր ընդ ձեզ։ Պտ. Եւ ընդ հոգւոյդ։ — Աղօթեսցուք։

*Եւ ասէ զյետի[ն] աղօթքն. եւ դառնայ առ ժողովուրդն եւ ասէ.* Տէր ընդ ձեզ։ Պտ. Եւ ընդ հոգւոյդ։ Քհ. Երթայք. պատարագեցաւ։ Կամ. Օրհնեսցուք զՏէր։ Պտ. Աստուծոյ գոհութիւն։

*Դառնայ օրհնէ զժողովուրդն խաչիւ եւ ասէ.* Օրհնեսցէ եւ պահեսցէ զձեզ ամենակարողն Աստուած Հայր, եւ Որդի եւ Հոգին սուրբ։ Պտ. Ամէն։[47]

Բ. ԽՄԲԳՐ.

Մարմին եւ արիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պահեսցեն զիս ի կեանս յաւիտենականս։ Ամէն։

Զոր բերանով, եւն,

Զոր բերանով ճաշակեցաք Տէր, մաքուր մտօք ըմբռնեսցուք, զի ի պատուական մարմնոյ եւ յարենէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եղիցի մեզ դեղ կենաց յաւիտենից։ Ամէն։

Հաճոյասցի քեզ, եւն։

---

[45] Աս ալ նոյնպէս լաւ եւս ունի A. Լատինականը կը սկսի՝ Quid retribuam Domino pro omnibus, եւն։ Ըստ այսմ BC համառօտ են։

[46] Աղօթքս ալ միայն A ունի լատինականին համեմատ, որ կը սկսի՝ Corpus tuum, Domine quod sumpsi, եւն։

ԺԴ. [47] Այս ամէնն ալ կայ լատինականին մէջ։ Ընդհանրապէս A շատ մտամբ աւելի մեր-

Ա. ԽՄԲԳՐ.

Իւ քահանայն խոնարհեալ առաջի սեղանոյն ասէ զաղօթս. Հաճոյ լիցի քեզ սուրբ Երրորդութիւն, պաշտօն սպասաւորութեան իմոյ. եւ շնորհեա զի զպատարագս զոր ես անարժանս մատուցի առաջի ամենատես աչաց մեծութեան քո, եղիցի ընդունելի քեզ. եւ ողորմութեամբ քով ինձ եւ ամենեցուն վասն որոց մատուցի զսայն՝ եղիցի ի քաւութիւն Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

Իւ ասէ. Տէր ընդ ձեզ: Պտ. Եւ ընդ հոգւոյդ քում: Փհ. Սկիզբն սրբոյ աւետարանին որ ըստ Յովհաննու: — Պտ. Փառք քեզ Տէր: — Փհ. Ի սկզբանէ էր Բանն եւ Բանն էր առ Աստուած... տեսաք զփառս նորա, զփառս իբրեւ զմիածնի առ ի Հօրէ, լի շնորհօք եւ ճշմարտութեամբ:

Բ. ԽՄԲԳՐ.

Հաճոյացի քեզ, սուրբ Երրորդութիւն, պաշտօն սպասաւորութեան մերոյ, եւ շնորհեա զի պատարագս այս՝ զոր մատուցի ես անարժանս առաջի ամենատես աչաց մեծութեանդ քո, եղիցի քեզ ընդունելի, ինձ եւ ամենեցուն ի քաւութիւն ողորմութեամբ քով: Քրիստոսիւ Տերամբ մերով: Ամէն:

[48] Ի յամենայն պատարագս, յորժամ ի ժամն ասացեալ լինի Զքեզ Աստուած գովեմք, ասի՝ Եղեւ պատարագս: Պտ. Աստուծոյ գոհութիւն: Յորժամ ոչ ասի Զքեզ Աստուած գովեմք, ասի՝ Օրհնեսցուք, Տէր, ի տեղի «Եղեւ պատարագ»ի: Յորժամ պատարագ լինի ննջեցելոց՝ ասի. Հանգիցեն ի խաղաղութիւն: Պտ. Ամէն: Ի ժամանակս քառասնորդաց, յառաջ քան առաջին աղօթքն պատարագին, ասի՝ Կրկնեսցուք զծունկս. Պտ. Արիք: Յառաջ քան աղօթքն ի վերայ ժողովրդեան ասի. Խոնարհեցուցէք զգլուխս ձեր. Պտ. Առաջի Աստուծոյ: Յորժամ եպ. լինի մատուցանողն՝ ասի, Խոնարհեցարուք դուք առ ի յօրհնութիւն:

Տէր ընդ ձեզ: Պտ. Եւ ընդ հոգւոյդ քում: — Սկիզբն սրբոյ աւետարանին ըստ Յոհաննու: Պտ. Փառք քեզ, Տէր: Ա. Գլ. Ի սկզբանէ էր Բանն, եւն:

---

Ահա Միաբանողաց պատարագն երեք ձեւով, ինչպէս դարերով գործածուեցաւ նոյն Կարգի մէջ: Հոս տեսածնիս ի հարգէ Պատարագի սովորական Կարգն է, այսինքն այն՝ որ բոլոր տարւոյն ամէն պատարագաց հիմը կը կազմէ: Իւրաքանչիւր աւուր յատուկ պատարագները կամ աւուր-պատշաճք տեսնել ուզողն՝ պէտք է ձեռքն ունենալ Հռոմի 1728ի տպագրութիւնը: Բայց ինչպէս վերը դրուած պատարագին մէջ՝ աւելի եւս այս աւուր-պատշաճից մէջ է այլեւայլ խմբագրութեանց եւ նաեւ նոյն խմբագրութեան այլեւայլ ձեռագրաց երբեմն շատ մեծ տարբերութիւնը: Մեր նպատակն եւ նաեւ գրքիս ծաւալը չեն ներեր այս մանրամասնութեանց մէջ երկար յապաղել: Ուստի կը շատանք հոս ABC խմբագրութիւններէն յատուկ Պատարագ մ'ալ յառաջ բերելով, զոր Միաբանողք յարմարցուցած են Ս. Գրիգորի Լուսաւորչի տօնին, որուն անուամբ նաեւ յորջորջեցին նաեւ իրենց Կարգն ալ: Ահա այս տօնի յատուկքն, որուն կը կցենք երկրորդ մ'ալ ի տօնի Ս. Հռիփսիմեայ՝ C խմբագրութենէն կամ տպագրութենէն:

---

ձաւոր է այժմու սովորական Լատինական Միսային քան յետոյ սրբագրեալ B եւ C բնագիրները:

[48] Bի այս խրատագրով լի վերջին մասն ալ կայ Cի մէջ՝ քիչ շատ տարբերութեամբ. (տես առ. էջ 151). զոր հոս յառաջ բերել աւելորդ կը համարինք: C ամէնէն վերջը ունի խրատագիր ծանօթութիւնս. «Վերյասացեալ կարգն Պահելոց ի պատարագս պահոցի նաեւ ի պատարագս մեծագոյնս, բայց սակայն յաւելցելոց, կամ բացթողեցելոց այնոցիկ, որք ի խրատաբանութիւնս նոցա ի սկիզբն Միսալին եդեալք են:»

## 1. ՊԱՏԱՐԱԳ Ս. ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ[1]:

(A) *Պատարագ Գրիգորի Լուսաւորչի:*

[*Ժամամուտ:*] Էհան զիս ի գբոյ տառապանաց, ի կաւոյ եւ ի տղմոյ: Հաստատեաց ի վերայ վիմի զոտս իմ. եւ ուղղեաց զգնացս իմ:

[*Փ/ն.*] Համբերելով համբերի Տեառն: Նայեցաւ առ իս, եւ լուաւ աղօթից իմոց:

[*Աղօթք:*] Ամենակարող մշտնջենաւոր Աստուած, որ ի խաւարէ հեթանոսաց ծագեցեր մեզ լուսաւորիչ զերանելին Գրիգորիոս, առաջնորդել ի ճանապարհս քո արդարութեան. շնորհեա մեզ զի նորին բարեխօսութեամբն ելցուք ի խաւարէ բնաւին մոլորութեանց. եւ ճշմարիտ միաբանութեամբ եւ խաղաղութեամբ ծառայեսցուք քեզ, Տէրամբ:

*Ընթերցուած ի գրոց իմաստութեան:* Ահա քահանայ մեծ, որ յաւուրս իւր հաճոյացաւ Աստուծոյ եւ գտաւ արդար, եւ ի ժամանակի բարկութեան եղեւ հաշտեցուցանող: Ոչ է գտեալ նմանող նմին. զի պահեաց զօրէնս բարձրելոյն: Վասն որոյ երդմամբ երդուաւ, եւ արար զնա աճեալ ժողովրդեամբ իւրով: Զգօրութիւն ամենայն հեթանոսաց ետ նմա. եւ զկտակութիւն իւր հաստատեաց ի վերայ գլխոյ նորա: Ծանեաւ զնա օրհնութեամբ իւրով. պահպանեաց նմա զողորմութիւն իւր. եւ եգիտ շնորհս առաջի աչաց Տեառն: Մեծացոյց զնա առաջի թագաւորաց, եւ ետ նմա պսակ փառաց: Հաստատեաց նմա ուխտ մշտնջենաւոր. եւ ետ նմա քահանայութիւն մեծ. եւ երանելի արար զնա փառօք. քահանայագործել եւ ունել զգովութիւն անուամբ նորին. եւ մատուցանել նմա խունկ արժանաւոր ի հոտ անուշութեան:

(B) *Ի Տօնի սրբոյն Գրիգորի Լուսաւորչին:*[2]

*Ժամամուտ:* Էհան զիս ի գբոյ . . . զգնացս իմ:

*Փ/ն.* Համբերելով համբերի . . . աղօթից իմոց: Փառք Հօր: Փառք ի բարձունս:

*Աղօթք:* Ամենակարող եւ մշտնջենաւոր Աստուած . . . զերանելին Գրիգորիոս, խոստովանողն քո եւ քահանայապետն, առաջնորդել ի ճանապարհս արդարութեան քո [3]. . . բնաւից մոլորութեանց, եւ [4]ճշմարիտ խոստովանութեամբ եւ միաբանութեամբ ծառայեսցուք քեզ: Տէրամբ:

*Ընթերցուած.* Ահա քահանայ մեծ. *ի հատուածից Թուղթ ի:*[5] [C. Ահա քահանայ մեծ, որ յաւուրս իւր հաճոյ եղեւ Աստուծոյ, եւ գտաւ արդար. եւ ի ժամանակի բարկութեան եղեւ հաշտութիւն: Ոչ գտաւ նման նմա. որ պահէր զօրէնս Բարձրելոյն: Վասն այսորիկ իրաւի երդմամբ աճեցոյց զնա Տէր ի վերայ ժողովրդեան իւրոյ: Զօրհնութիւն ամենայն ազգաց ետ նմա. եւ զկտակ իւր հաստատեաց ի վերայ գլխոյ նորա: Ճանաչեաց զնա յօրհնութիւնս իւր. եւ եգիտ զշնորհս առաջի աչաց Տեառն: Մեծացոյց զնա առաջի թագաւորաց եւ ետ նմա զպսակ փառաց: Կացոյց նմա Տէր զկտակ մշտնջենաւոր, եւ ետ նմա զքահանայութիւն մեծ. եւ երանելի արար զնա ի փառս: Ի կիր առնուլ զքահանայութիւն, եւ ունել զփառս յանուն նորա, եւ մատուցանել նմա զխունկս արժանաւորս ի հոտ անուշութեան:]

---

[1] A տես Թ. 67, Թղ. 106բ¹—107բ¹: — B տես Թ. 463, Թղ. 113բ—184ա: C տես աջ. էջ 425—26 Հակոբեանի ժԵ. ին: — Հոս ալ, ուր որ B նոյն է դիմացը գրուած A ի ընթերցուածոյն հետ՝ կէտերով կը նշանակենք, առանց կրկին օրինակելու:

[2] C “Ի Տօնի սրբոյն Գրիգորի Հայաստանեայց լուսաւորչին եւ խոստովանողի:” Ժամամուտի քով նշանակեր է C “Սղ. ԼԹ.”: — Ուր բան մը չենք նշանակեր՝ C համաձայն է B ին: Ի հարկէ կէտերով նշանակուած տեղերը՝ C ի ալ ընթերցուածքը նոյն է A ի հետ:

[3] C “Շնորհեա, տէր, զի նորին բարեխօսութեամբ” ևն:

[4] C “Եւ ճշմարիտ խաղաղութեամբ եւ միաբանութեամբ ծառայեսցուք” ևն:

[5] Այսպէս համառօտիւ նշանակեր է միայն B. իսկ C ի ընթերցուածը գրենք փակագծի մէջ: Խորագիրն է՝ “Ընթերցուած ի գրոց իմաստութեան: (Եկլ. ԽԴ:)” Սիրաքայ այս գլուխին հայերէն հին թարգմանութեամբ չգտնուելով՝ նոր գրեր են թէ A եւ թէ C խմբագրութիւնք, իրարմէ բաւական տարբեր:

*[Մեսեդի.]* Կացոյց նմա Տէր ուխտ խաղաղութեան, եւ իշխան արար զնա. զի եղիցի նմա արժանաւորութիւն քահանայութեան յաւիտեան։

*[Փխ.]* Ահա քահանայ մեծ, որ յաւուրս իւր հաճոյ եղեւ Աստուծոյ, եւ գտաւ արդար։ Ալէլուիա. ալէլուիա։

*[Փխ.]* Սուրբ խոստովանող Քրիստոսի Գրիգորիոս, զօրացո զժողովուրդս քո. զի որք նեղին ի մէջ զանազան թշուառութեան, փառօք երանութեան քո ազատեսցին։ Ալէլուիա։

*Աւետարան ըստ Յովհաննու.* Ի ժամանակին ասէ Յիսուս ցաշակերտսն իւր եւ զժողովուրդսն հրէից. Ես եմ հովիւ քաջ...։ Եւ եղիցին մի հօտ եւ մի հովիւ։ (Յովհ. Ժ, 11—16։)

*[Սրբասացութիւն:]* Ով լուսափայլ ջահ Հայաստանեայց սուրբ քահանայապետ Գրիգորիոս, զոր ոչ շիջոյց հողմ բազմապատիկ չարչարանացն, հայցեա ի Տեառնէ զօգնութիւն ի նեղութեան եւ զմխիթարութիւն ժողովրդեան քո։

*[Քարոզ.]* Ամենակարող մշտնջենաւոր Աստուած, զմատուցեալ ընծայս մեծութեան քո, բարեխօսութեամբ երանելոյն Գրիգորի Լուսաւորչին եւ խոստովանողին քո եւ քահանայապետին, եղիցի մեզ օգուտ յաւիտենական փրկութեան, Տէրամբ։

*[Հաղորդութիւն:]* Այլ եւս ոչխարք են իմ, որ ոչ են յայսմ գաւթէ, եւ զայն եւս պարտ է ածել այսր. եւ ձայնի իմում լուիցեն, եւ եղիցին մի հօտ եւ մի հովիւ։

*[Յետ Հաղորդութեան:]* Ճաշակեալք զխորհուրդ փրկութեան մերոյ, պարգեւեա

*Մեսեդի:*[6] Կացոյց նմա Տէր զկտակ խաղաղութեան եւ արար զնա իշխան, զի եղիցի նմա արժանաւորութիւն քահանայութեան ի յաւիտեան։

*Փխ.* Ահա քահանայ... ալէլուիա։

*Փխ.* Սուրբ խոստովանողդ Քրիստոսի Գրիգորիոս, զօրացո զժողովուրդս քրիստոնէից, զի որք նեղիմք[7] ի մէջ զանազան թշնամեաց, փառօք երանութեանդ քո ազատեսցին, եւ ժամանեսցեն ի հանդիսան յաւիտենական։ Ալէլուիա։

*Աւետարան.* Ես եմ հովիւն քաջ։ *Գիրք Ա. Կիրակի յետ Ը օր զատկին, Թուղթ ԾԼԹ:*[8] Հաւատամ։

*Սրբասացութիւն:* Ով լուսափայլ ջահ [9]... ժողովրդեան քո։

*Քարոզ աղօթք:* Ամենակարող եւ մշտնջենաւոր Աստուած, մատուցեալ ընծայս[10] մեծութեանդ քո բարեխօսութեամբ երանելոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին, խոստովանողին քո եւ քահանայապետին, եղիցի մեզ օգուտ ի յաւիտենական փրկութեան, Տէրամբ։

*Հաղորդութիւն:*[11] Այլ եւս ոչխարք են ...մի հովիւ։

*Յետ հաղորդելոյ աղօթք:*[12] Ճաշակեալք զխորհուրդ... Գրիգորի մերոյ Լու-

---

6 C "Փխ. (Էկլ. ԽԵ.) Կացոյց նմա Տէր զկտակ" եւն։

7 C "Զի որք նեղին" եւն, ինչպէս ունի A ալ։

8 Ըստ այսմ B ալ A ի սահմանած աւետարանը (Յովհ. Ժ, 11—16) կ'որոշէ ընթեռնուլ։ C բոլորովին տարբեր է. "Հետեւումն սրբոյ աւետարանիս ըստ Մատթէոսի։ (Գլ. ԻԵ։) Յայնմ ժամանակի ասաց Յիսուս աշակերտաց իւրոց զառակս զայս. Այր մի գնացեալ ի տար աշխարհ, կոչեաց զծառայս իւր... ի վերայ բազմաց կացուցից զքեզ, մուտ յուրախութիւն Տեառն քո։" Ուստի Մատթ. ԻԵ, 14—23։

9 C "Ով լուսափայլ ջահդ... քահանայապետդ" եւն։

10 Միայն B ուղիղ ունի "մատուցեալ ընծայս." A եւ C "զմատուցեալ" եւն։ Վերջը C' "...օգուտ յաւիտենական փրկութեան։"

11 Աստ տեղ C "Հաղորդ. (Մատթ. ԻԵ.) Տէր հինգ քանքար ետուր ցիս. արդ աւասիկ հինգ եւս այլ քանքար, զոր ի վերայ շահեցայ։ Ազնիւ, ծառայ բարի եւ հաւատարիմ մուտ յուրախութիւն Տեառն քո։"

12 C "Յետ հաղորդութեան"։ Վերջն ալ՝ "...օգնեսցէ մեզ յամենայն տեղիս. որոյ պատիւ մատուցաք զնուէրս զայս քոյոյ մեծութեանդ. Տէրամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ, որ ընդ քեզ կենդանի է եւ թագաւորէ ի միութիւն Հոգւոյն սրբոյ Աստուած ի յամենայն յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։"

ողորմած Աստուած, զի աղօթք երանելոյն Գրիգորի լուսաւորչին, խոստովանողին քո եւ քահանայապետին օգնեսցէ մեզ յամենայն տեղիս, յորոյ պատիւ մատուցաք զնուէր մեծութեանդ։ Վասն Տեառն։

սաւորչին... օգնեսցէ մեզ ընդ ամենայն տեղիս, յորոյ պատիւ մատուցաք զայս քոյին մեծութեանդ։ Տէրամբ։

## 2. ՊԱՏԱՐԱԳ Ս. ՀՌԻՓՍԻՄԵԱՑ[1]։

*ի տօնի սրբուհեացն Հռիփսիմեայ եւ ընկերացն կուսանաց եւ մարտիրոսաց:*

*Ժամամուտ:* Ուրախ եղիցուք ամենեքեան ի Տէր, զօր տօնի հանդիսացուցանելով, ի պատիւ երանուհւոյ կուսին Հռիփսիմեայ եւ ընկերաց նորին, զորոյ յիշատակի ցնծան հրեշտակք եւ գովեն զՈրդին Աստուծոյ։

*Փխ.* Բղխեաց սիրտ իմ զբան բարի, եւ ասեմ զգործս իմ թագաւորի։

Փառք Հօր։ Փառք ի բարձունս Աստուծոյ։

*Աղօթք:* Ամենակարող եւ մշտնջենաւոր Աստուած, որ ի տարաժամեալ երեկոյի յաւիտենից այսօրիկ ծագեցեր մեզ զարուսեակ արեւմտից, զերանուհի կոյս Հռիփսիմէ եւ զընկերս նորին, առ ի ճանաչել զարեգակն արդարութեան զՈրդիդ քո. շնորհեա քաւիչ, զի զորոց զհանդէսն կատարեմք, նոցին բարեխօսութեամբն միշտ անմոլար հետեւեսցուք ճշմարիտ լուսոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Որդւոյ քոյ, որ ընդ։

*Ընթերցուած ի գրոց իմաստութեան:* (Էկլ. ԾԱ։) Խոստովան եղէց քեզ Տէր թագաւոր, եւ գովեցից զքեզ Աստուած փրկիչ իմ, եւն։[2]

*Փխ.* (Սղ. ԽԴ.) Սիրեցեր զարդարութիւն եւ ատեցեր զանօրէնութիւն. վասն այսորիկ էօծ զքեզ Աստուած. Աստուած քո իւղով ուրախութեան, առաւել քան զընկերս քո։

*Փխ.* Լուր դուստր եւ տես եւ խոնարհեցո զունկն քո. զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քոյ։ Ալէլուիա. ալէլուիա։

*Փխ.* Կանայք պատուականք քաղաքաւ եւ ազգաւ, առաւել վաճառականք անյայտ մարգարտին, եգին զանձինս գրաւականս բազմաց, եւ եղեն փրկանք յանծանօթ աշխարհի։[3] Ալէլուիա. ալէլուիա։

*Հետեւումն սրբոյ աւետարանիս ըստ Մատթէոսի:* (Գլ. ԻԵ։) Յայնմ ժամանակի. առաց Յիսուս աշակերտաց իւրոց զառակս զայս։ Նման է արքայութիւն երկնից տասն կուսանաց....։ Արթուն կացէք, զի ոչ գիտէք զօրն եւ ոչ զժամն։[4]

*Արքաագ.:* (Սղ. ԽԴ։) Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա, եւ զընկերս նորա տարցին նմա ցնծութեամբ եւ ուրախութեամբ. եւ տարցին ի տաճար թագաւորին Տեառն. փոխանակ Եւայի դատերք նորա, մարտիրոսք եւ կուսանք ընծայեալք Աստուծոյ։

*Ժամուկ.* Ընկալ Տէր զընծայս եւ զմաղթանս ժողովրդեան քո, եւ զորս ուղղեցեր քաղցրահոտ անձրեւօք արեւմտական ամպոցն սրբուհւոյ կուսին Հռիփսիմեայ եւ ընկերաց նորին, նոցին բարեխօսութեամբն պաղաբերեա ի մեզ զամենայն գործս արդարութեան, Տէրամբ մերով։

*Հաղորդ.* Փառաց ի փառս բարձրացեալ, պարծին ի պատիւ եւ ի փառս, երեսուն եւ եօթանք կուսանքն, որք անթառամ պսակեցան ի յանվախճան յաւիտեանս։

*Յետ հաղորդութեան.* Ընկալաք Տէր զառհաւատչեայ յաւիտենականի փրկութեան, յաւուր տօնախմբութեան սրբուհւոյ կուսին եւ մարտիրոսին քո Հռիփսիմեայ եւ ընկերաց նորին. աղաչեմք, զի նոցին բարեխօսութեամբն միշտ զինուորեսցուք առ ի միաբանութիւն եկեղեցւոյ քում սրբոյ, եւ ի հանդերձելումն թագաւորեսցուք ընդ նոսին ի յարքայութեանն երկնից, Տէրամբ մերով։

---

1 Միայն Cի հաւաքում, տպ. էջ 416—17, Հոկտեմբեր հինգին։

2 Ընթերցուածը (Սիրաք, ԾԱ. 1—8) չգրինք ամբողջ. թարգմանութիւնն ալ նոր է։

3 Խոշկաշէնցի այս կտորը կցկցեր է մեր Շարականցի "Անձինք„ Հռիփսիմեանց շարականի "Կ„ տառի տնէն։

4 Աւետարանի ընթերցուածը (Մատթ. ԻԵ. 1—12) ամբողջ չգրինք հոս։

Միաբանողաց Միսալին հետ կապ ունի ըստ ինքեան Լեհահայոց (եւ Հունգարահայոց) պատարագը։ Երկար ժամանակ ալ գործածուած է՝ գոնէ ըստ մասնէ՝ նոյն երկիրները, եւ քիչ շատ նաեւ ցայսօր, այսինքն գլխաւորաբար Ը.—օօ—ը-ղոփղաճ+ը, կամ յատուկ պատարագները։ Վասն զի բուն Հասարակաց Պատարագը չկրցաւ մուտք գտնել ընդհանրապէս, եւ այսօր եւ ոչ տեղ մը կը գործածուի լիակատար, բայց ունեցած է ազդեցութիւնը։ Լեհահայք գործածելով հանդերձ մեր սովորական պատարագը՝ շատ տեղ կերպափոխեր են նոյնը՝ առնելով կտորներ Միաբանողաց Պատարագէն եւ հիւսելով մեր սովորականին մէջ։ Այսպէս նաեւ Լեհահայոց 1885ի տպագրուած պաշտօնական Խորհրդամատոյցն[1], որուն եւ Լեհահայոց ձեռագիր Խորհրդատետրներու վրայ կը խօսուի նաեւ յետոյ։*

---

[1] Տպ. Վիեննա 1885, 1° էջք 35։

* Մինչեւ հոս՝ մեր աւելցուցած Զ. գլուխը։ ՀՐՏՐ.

Է.

# ՀԱՅՈՑ ԱՅԺՄՈՒ ԽՈՐՀՐԴԱՄԱՏՈՅՑԸ

## ԺԸ ԴԱՐՈՒՆ ՍԿԻԶԲՆԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՑԱՅՍՕՐ

---

### 1.

*Ըստ Վատիկանեան Օրինակին:*

Ըստ մասին եպերելի ձանձրութիւնն ի նախնեաց սրուած եւ ընդունուած ձեւերուն, մանաւանդ քիչ իմացումն Հրամանական վարդապետութեանց, եւ առերեւոյթ պերճութիւն Բիւզանդեան պատարագին՝ ածին զմերինները Բիւզանդեան կարկատանաց:

Հնագոյն պատարագները գոռ պատերազմող նկարագիր մ'ունէին, ի մասնաւորի Բարսղինը՝ որն որ արիոսեան ըմբռնմանց դէմ զէնք մըն էր. եւ Գր. Նազիանզացւոյնը՝ որն որ մարդեղութեան մոլորութեանց դէմ զինեալ էր՝ որոնք Անտիոքէ կ'ելլէին: Այլազգ տրամադրութիւն ունէր Բիւզանդեան պատարագը, Ոսկեբերանէ սկսեալ գուցէ՝ յառաջ տարուած ուղղութիւնը՝ ողորկութիւն մ'ունէր. խունկ մատուցանել, սրբասացութիւն, սաղմոսներ, խաղաղական կերպարանք մը կու տային, աղօթքները պատարագին սրբութեան արժանաւորութեան վրայ կը դառնային: Բազմիցս նպաստ կ'ըլլային տիրելու արեւելեան կողմանց՝ տիեզերական Պատրիարքին հեղինակութիւնը, թագաւորին կամ կայսեր եւ արքունեաց մասնակցութիւնը, սարկաւագաց եւ դպրաց կարգաւորութիւնը: Ասոնք ամէնը եւ Մետրապոլիտները Կ. Պոլիս շրջակայքը գրաւեր էին միօրինակութեան. այնպէս որ կամաց կամաց հրաժարեցան սեպհական պատարագամատոյցներէն շրջակայք: Նախ եւ առաջին Նիկեայի թեմը, երբը հեռաւոր տեղերը՝ ուր որ Պետրոսի սարկաւագին վկայութեամբ՝ Բարսղի ձեւը բռնած էր եւ յառաջ կ'երթար. միանգամայն "առաքելական" անուանակոչութիւն մ'ելաւ ասնոր պատարագին, Ղեւոնդիոս սարկաւագին ըսածին նայելով՝ "առաքելական" ծագում մը, որով կը տարածուէր նոր պատարագը:

Ասանկ քայլերով յառաջանալով նոր պատարագը՝ ամենուն միօրինակութիւնը յառաջ բերաւ մինչեւ Մահմետին առնելը: Անտիոք, Երուսաղէմ եւ Աղեքսանդրիա տարածուած էր նոր միօրինակութիւնը այնպէս որ Թէոդորոս Պալսամոն իրաւագէտն իր առենները Կ. Պոլսոյ նոր Հռոմայ հետ միօրինակութիւնը օրէնք կը համարէր:

*Մատչելութեան արժանի է որ Առաքելական աթոռն ամենեւին գործակցութիւն կամ հաւանութիւն ունեցած չէ աս միօրինակութեան. հին իր ընթացքն բռած է, եւ ազգ եւ ազինք հետեւած են՝ ի մէջ այլոց Ռուսք, որոնք աստուածային պաշտամանց կատարելագոյն կերպը զայն կ'ենթադրեն հերձուածողօրէն: Բացառութիւն մ'ալ նախնագոյն պատարագաց ստիպուած էին ընելու, այսինքն Ս. Բարսղի, բայց ո՛րչափ ամփոփած անձուկ վիճակի մէջ: Բիւզանդեան յաւելուածներ ի սկզբան՝ պակաս չէին, եւ յետոյ Կոչման այլայլութիւնն երեւելի եւ նշանաւոր էր, յարմարցուած Բիւզանդեան գաղափարներուն, թող ժամանակին սահմանաւորութիւնը:*

*Նշանաւոր էր Թէոդորոս Պալսամոն Կ. Պոլսոյ ձեւերն արժեցընելու: Հարցուեցաւ Թէոդորոս ի Մարկոսէ Աղեքսանդրու Հայրապետէ թէ "ի կողմանս Աղեքսանդրեայ եւ Երուսաղեմի պատարագք եւ գրութիւնքն ասացեալք ի սրբոց առաքելոցն Յակոբայ Տեառն եղբօր եւ Մարկոսի ընդունելի՞ իցեն ի սրբոյ եւ ի կաթողիկէ եկեղեցւոյ թէ ոչ:" Կը պատասխանէ Թէոդորոս. "Ամենայն եկեղեցեաց պարտ է զհետ երթալ սովորութեանց Նորոյ Հռոմայ, այսինքն Կ. Պոլսոյ, եւ պատարագել ըստ աւանդութեան մեծամեծ վարդապետացն Յովհ. Ոսկեբերանի եւ Ս. Բարսղի: Յակոբայ եւ Մարկոսի եւ ոչ յիշատակ մուծեալ է՝ ի կանոնն Առաքելոց 85 եւ ի կանոնն Լաւոդիկեայ 59, եւ ոչ որ գլուխն է ամենայնի՝ ընդունի ի պատարագս՝ կաթողիկէ ամենասուրբ եւ տիեզերական աթոռոյն Կ. Պոլսոյ եկեղեցի", յառաջ բերելով Տրուղեան ժողովոյն 32 կանոնն ալ թէ "Միտ դնել արժան է եթէ նախ Յակոբոս եղբայր Տեառն իբրեւ առաջին քահանայապետ Երուսաղեմացւոց եկեղեցւոյն՝ աւանդեաց զաստուածային նուիրապարութիւնս՝ որ ճանաչի ի մէնջ, իսկ յԵրուսաղեմացւոց եւ ի Պաղեստինացւոց ի մեծամեծ տօնս պաշտի: Աղեքսանդրացիք ասեն թէ գոյ եւ Ս. Մարկոսի՝ որով վարին իբր ի բազումս: Ես ըստ սիւնհոդոսի մանաւանդ եւ առաջի թագաւորին սրբոյ խօսեցայ զայդ եթէ Պատրիարգն Աղեքսանդրիայ դիմեաց յարքունական քաղաքս. զի ունէր ի մտի մատուցանել պատարագ ընդ մեզ եւ ընդ տիեզերական Հայրապետին ի մեծի եկեղեցւոջ. եւ պնդէր պահել* (ὥρμησε κρατεῖν) *զկոնդակն Յակոբայ, այլ արգելաւ ի մէնջ, եւ ստիպեցաւ մատուցանել պատարագ որպէս եւ մեք":[1] Կ'երեւայ իրեն սրտին ուռեցքը՝ որով ան խստապահանջ անհանդուրժողութեամբ Կ. Պոլսոյ միօրինակութիւնը կը պահանջէր, ինչպէս կ'երեւայ ոմանց:*

*Իսկ այլք իրենց բախտաւորութեանը մէջ դժբախտ եղան. բախտաւոր ասոր համար որ ի նախնեաց ժառանգած ունէին Բարսղի պատարագը, եւ Գրի.*

---

[1] Adalb. Daniel, Cod. Lit. էջ 82. *Αἱ περὶ τὰ μέρη τῆς 'Αλεξανδρείας καὶ τῶν Ἱεροσολύμων ἀναγινωσκόμεναι λειτουργίαι καὶ λεγόμεναι συγγραφῆναι παρὰ τῶν ἁγίων ἀποστόλων Ἰακώβου τοῦ ἀδελφοθέου καὶ Μάρκου, δεκταί εἰσι τῇ ἁγίᾳ καὶ καθολικῇ ἐκκλησίᾳ ἢ οὔ; ... σημειῶσαι ἀπὸ τοῦ παρόντος κανόνος ὅτι πρῶτος ὁ Ἰάκωβος ὁ ἀδελφόθεος ὡς πρῶτος ἀρχιερατεύσας τῆς Ἱεροσολυμιτῶν ἐκκλησίας παρέδωκε τὴν θείαν ἱεροτελεστίαν, ἥτις παρ' ἡμῖν ἀγνοεῖται, παρὰ δὲ τοῖς Ἱεροσολυμιταῖς καὶ τοῖς Παλαιστιναίοις ἐνεργεῖται ἐν ταῖς μεγάλαις ἑορταῖς. Οἱ δὲ 'Αλεξανδρεῖς λέγουσιν εἶναι καὶ τοῦ ἁγίου Μάρκου, ᾗ καὶ χρῶνται ὡς τὰ πολλά. 'Εγὼ δὲ συνοδικῶς μᾶλλον δὲ καὶ ἐνώπιον βασιλέως τοῦ ἁγίου ἐλάλησα τοῦτο, ὅτι ὁ πατριάρχης 'Αλεξανδρείας ἐνεδήμει εἰς τὴν βασιλεύουσαν. Μέλλων γὰρ λειτουργῆσαι μεθ' ἡμῶν καὶ τοῦ Οἰκουμενικοῦ ἐν τῇ μεγάλῃ ἐκκλησίᾳ ὥρμησε κρατεῖν τὸ τῆς τοῦ Ἰακώβου λειτουργίας κοντάκιον, ἀλλ' ἐκωλύθη παρ' ἡμῶν καὶ ὑπέσχετο λειτουργεῖν καθὼς καὶ ἡμεῖς.*

*Նաղիանզացւոյ պատարագներն ամբողջ ստացան, հինգ վեց թուով: Ասանկ փաստաւոր ստացումէն ետքը՝ կամաց կամաց մոռացողք ըլլալով՝ ընկան ի "Բիւզանդեան կարկատանս": Մտադրութեան արժանի է որ մէկն իրենց սախպում չըլլաւ առ այս: Յունացմէ Թէոփիանոս կրկին հրեշտակութեամբը՝ զորն որ Կարդ. Մայի յառաջ բերաւ, յիշատակ մը սոսր վրայ չըրաւ. միայն երկրորդ հրեշտակութեանն էր որ ջրոյն խնդիրը յառաջ բերելով՝ Գրիգորի Նաղիանզացւոյն կոչման ընծայութեան մէջէն վկայութիւն մը բերաւ, զորն որ մենք ալ կոչած էինք "Հիմնական Տարբերութեանց" մէջ. ուրիշ պատարագի խնդիր մը չըրաւ:*

*"Կարկատմունք" երկու կերպ եղած են — անկատար եւ կատարելագոյն — Հայոց կողմանէ: Առաջինն եւ անկատարը՝ Գրիգորի Վկայասէրի ատենները կ'երեւայ, երբ որ նոյն Հայրապետը պանդուխտ Կ. Պոլիս գացած էր, եւ օգնականներով աշխատեցաւ զանազան բաներ թարգմանելու, անշուշտ սա ալ բերաւ մէկտեղ, եւ կը բանեցընէր անտարակոյս: Ահա Վատիկանեան Օրինակէ մ'ունինք[1] եւ զոր հոս կը տեսնենք:*

*Բայց կատարելագոյնը՝ որով լիագոյն կերպարանք տրուած է Բիւզանդեան պատարագէն մեր պատարագին, Լամբրոնացւոյնն է՝ զորն որ հարիւրաւոր տարիներ ետքը վճարեց, ինչպէս քիչ մ'ետքը պիտի տեսնենք:[2]*

## ՀԱՍԱՐԱԿ ԿԱՄ ԱՅՍՕՐՈՒԱՆ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ՊԱՏԱՐԱԳԻՆ ԸՍՏ ՎԱՏԻԿԱՆԵԱՆ ՕՐԻՆԱԿԻՆ

### ՕՐՀՆՔ ԱՐԿԱՆԵԼՈՅ ՍՊԱՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ[3]

[4]Յորժամ կամեսցէ քահանայն... զգեստաւորիլ[5]... սարկաւագքն մատնեն յառաջագոյն զհանդերձն՝ որ զգեստաւորելոց են պատարագչին: Ապա ասասցէ Յիշեա, Տէր, զԴաւիթ. Փառք Հօր: Սարկաւագն. Խնդրեսցուք: Քահանայն ասէ. Որ զգեցեալ ես զլոյս... ի յերկիր[6] երեւեցար... ամենեցուն, դու ես արքութիւն... եւ պատիւ ընդ Հօր եւ ընդ սուրբ Հոգւոյդ այժմ եւ...: Ժողովուրդն. Ամէն: Եւ ապա զգենու զհանդերձն, եւ ածէ գօտի ընդ մէջն, եւ արկանէ ուրար՝ ասելով. Քահանայք քո զգեցցին զարդարութիւն, եւ սուրբք քո ցնծալով ցնծասցեն: Եւ զգենու զշուրջառն ասելով. Ցնծասցէ անձն իմ ի Տէր, զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան եւ պատմուճան ուրախութեան. իբր փեսայ եդ ինձ պսակ, եւ որպէս հարսն զարդու զարդարեաց զիս:

Եւ ապա առնու զհացն առաջադրութեան սարկաւագն եւ դնէ ի մաղզմայն ասելով առ քահանայն. Օրհնեա, տէր: Ապա ասէ քահանայն. Յիշատակ Տեառն մերոյ...: Սարկաւագն արկանէ զգինին խառնել ի սկիհն, եւ ասէ քահանայն. Յաղագս յիշատակի եւ այլն.: Սարկաւագն. Եւ եւս խաղաղութեան զՏէր: Եւ քահանայն ասէ զաղօթս զայս — Պատարագամատոյց Աստուծոյ արարեալ սուրբ հօրն Յովհաննու Ոսկեբերանի. — Տէր Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ... եւ կեցուցիչ ամենայն աշխարհի... օրհնել զմեզ †[7] ...օրհնեա † զյառաջադրութիւնս... անդստապարտս պահեա... ամենապատիւ եւ մեծ վայելուչ անուանդ... եւ սուրբ Հոգւո. ամէն: Եւ օրհնեալ սարկաւագն ասէ. Տէր թագաւորեաց:

Եւ ապա առնու խունկ ըստ մատուցանելոյ սարկաւագին, առաջի առնելով սարկաւ. զծածկոցն, քահանայն. Խունկ մատուցանեմ... Քրիստոս Աստուած մեր ի բուրումն... ի սուրբ եւ յերկնային...: Եւ դնէ զխունկն, եւ խաչակնքէ եւ խնկէ զընծայսն, երկրպագէ եւ-

[1] Վատիկ. մատենադարանին Հայերէն գրոց Ձեռագրաց Երրորդը, էջ 44. բոլորգիր, մագաղաթեայ, զարդարեալ մանրանկարուք գեղեցկօք:

[2] Տես այս հատուածին յաջորդող հատուածը:

[3] Լամբրոնեան Օրինակին հետ (ըստ տպ. Վենետ. 1847, էջ 193–226) նոյն եղածները թողլով, տարբերածները միայն նշանակած ենք հոս:

[4] Նօտր գրերով նշանակուածները կարմրագիր են Օրինակին մէջ:

[5] Ա՛յսպէս՝ "զգեստաւորիլ:"

[6] Ա՛յսպէս՝ "ի յերկր:"

[7] Այս խաչերը ուրիշ ձեռք կարմրագիր ետքէն վրան գրուած են խոշոր գրչութեամբ:

գութեամբ... գործովք բարութեան... սեղանոյս Աստուծոյ... զողորմութիւն, եւ ըղշնորհս... կեցուսցէ եւ ող.։ Ժողովուրդն. Կեցո, Տէր։

Քահանայն թէ սարկաւագ կայ ի խորհըրդեան, մինչ նա ասէ զքարոզն, երկրպագէ, եւ խաղաղեցուցանէ ժողովուրդն, բազկատարածեալ կայ առաջի սրբոյ սեղանոյն, եւ ասէ զաղօթս ի ծածուկ. Տէր Աստուած զօրութեանց... պատուեալ, մարդասիրապէս այսպիսի անպատում եւ ահաւոր խորհ... զպատարագիս... առ ի մէնջ † զյառաջադրութիւնս զայս † եւ աւարտեա †... զհացս զայս եւ բաժակս. ի յայն՝ Շնորհօք եւ... Փրկչի... ընդ որում քեզ Հօր միանգամայն եւ Հոգւոյդ վայելէ փառք, իշխ...։ Ժողովուրդն. Ամէն։ Քահանայն. Խաղաղու.։ Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։

Սարկաւագն. Ողջոյն տուք... որ ոչ կարող էք հաղորդել՝ առ դրունս ելէք եւ աղօթեցէք։ Եւ ողջունեն զմիմեանս եւ զիրեարս։ Սարկաւագն ասէ. Ահիւ կացցուք... եւ նայեսցուք...։ Ժողովուրդն. Ողորմութիւն։ Քահանայն. Շնորհք, սէր... եւ Հոգւոյն... ընդ ձեզ եւ ընդ...։ Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։ Սարկաւագն. Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր։ Ժողովուրդն. Ունիմք առ քեզ Տէր...։ Եւ սարկաւագն. Եւ գոհացարուք զՏեառնէ...։ Ժողովուրդն. Արժան եւ...։

Քահանայն յետ նորա ասէ. Արժան է ստուգապէս եւ... փութով միշտ երկրպագելով փառաւորել... զկրճիմ, նոր[1] ժողովուրդ ինքեան առ զկեղեցի սեփականեալ զհաւատացեալս... եւ նորագործապէս ճարտարապետեալ... ոչ հանդուրժէին... զուարթնոցդ ջոկքդ զարհուրեալք ի փայլակնացայս... ընդ երկնայնոցդ պարել զհոգեղէն զպարս... նուագս — ի յայն — Եւ համարձակապէս...։ Դպիրքն եղանակեն. Սուրբ, սուրբ...։

Քահանայն բազկատարած աղօթէ ի ծածուկ. Սուրբ, սուրբ... խնամեալս փոփեցեր[2]... ի վաղճան... ինքնդ է բաշխող եւ նոյն ինքնդ բաշխի ի մէջի մերում... մարմնացաւ յաստուածածին եւ ի սուրբ Կուսէն... ընդ ամենայն երկիրն[3] մարդկային... եւ յառ իթ փրկութեան... կամաւ ի խաչն †... յանմահ, յանարատ. յարարչագործն ի ձեռս՝ օրհնեաց † գոհացաւ, եբեկ †... ասելով — Բարձր — Առէք կերայք ի սմանէ, այս մարմին իմ է † որ վասն ձեր եւ բազմաց բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ Ժողովուրդն. Ամէն։ Քահանայն. Նոյնպէս եւ զբաժակն առեալ օրհնեաց † գոհացաւ, էարբ, ետ... ասելով — Բարձր — Առէք արբէք ամենեքեան. այս արիւն իմ է նորոյ ուխտի որ յաղագս ձեր եւ բազմաց հեղու ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ Ժողովուրդն. Ամէն։

Քահանայն. Եւ զայն միշտ... ծանոյց մեզ ճշմարիտ Աստուած, Աստուած կենդանեաց եւ մեռելոց։ — Խոնարհի. — Եւ արդ մեք... Միածնի քո † յիշեմք... զչարչարանսն †... զխաչելութիւնն †... զնստելդ... զահաւոր, զփառաւորեալ զմիւսանգամ... օրհնեմք...։ — Բարձր. — Զքոյս ի քոյոց...։ Ժողովուրդն երիցս. Ցամենայնի օրհնեալ...։

Քահանայն յետ նորա աղօթէ. Զքեզ արդարեւ... անպատում եւ ահաւոր խորհրդոյս... մերոյ[4] ինչ բարեգործութեանց... եւ հանապազ... համարձակիմք մերձենալ...։ Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք։ Ժողովուրդն. Առաջի քո, Տէր։ Քահանայն. Երկիր պագանեմք... յընծայս † յայս †... սուրբ † զՀոգիդ։ Եւ ծնրադրեալ խաղացնէ զընծայն երիցս ասելով։ Որով զհացս օր-†հնեալ †...։[5] Սարկաւագն. Ամէն։ Քահանայն՝ †յոյծ. Եւ զգինիս օրհնեալ †...։[6] Սարկաւագն. Ամէն։ Քահանայն. Փոխարկելով Հոգւովդ սրբով։ Սարկաւագն. Ամէն։

Քահանայն. Որպէս զի... անդատապարտութիւն եւ ի թող.։ Սարկաւագն. Ամէն։ Քահանայն ասէ. Սովաւ շնորհեա... քահանայից, սարկաւագաց, թագաւորաց, ճանապարհորդելոց, նաւելոց, վտանկելոց, աշխատելոց ի պատերազմունս... զբարեխառնութիւն. եւ անդէոց... փութապէս... զյառաջագոյն ննջեցեալսն՝ զնախահարս, զհայրապետս, զմարգարէս, զառաքեալս, զվկայեալս, զեպիսկոպոսունս... զվախճանեալս —

---

[1] Ա՛յսպէս։

[2] Ձեռագիրն այսպէս ունի։

[3] Այսպէս օրինակին մէջ։

[4] Այսպէս ձեռագիրը։

[5] Աս խաչանշանը բուն առաջին գրողին կը վերաբերի, նոյն մաքուր եւ բարակ գրչով գրուած, սեւադեղով. քովինը (խաչերը) կարմրադեղով եղէն գրուած է, ինչպէս ցայսվայր նշանակուած խաչերը։

[6] Աս խաչանիշն ալ նոյնպէս սկզբնական գրողին կը վերաբերի, նոյնպէս մաքուր եւ բարակ գրուած, սեւադեղով. մէկալ նորերը ամգոյն կարմրադեղով են։

է յոյն — Ընդ որս եւ մեզ... Աստուած աղաչ.: Ժողովուրդն. Ցիշեա, Տէր, եւ ողորմեա:

Քահանայն: Աստուածածնի սրբոյ կուսի... մկրտչի, Ստեփաննոսի նախավկայիսն եւ ամենայն.,. սուրբ պատարագս, աղաչեմ: Սարկաւագն յառաջակողմն սեղանոյն կանգնեալ յենամած է ասէ. Առաքելոց սրբոց... հայրապետաց սրբոց առաքելաղ. եպիս. երից... եղիցի յիշատակ սուրբ պատարագս աղաչեմք...:...Լուսաւորչացն սրբոց...Առիստակիսի... ամենայն հօվուաց... Հայաստան աշխարհի եղիցի յիշատակ սուրբ պատարագս... սրբոց եւ առաքինասէր կրօնաւորաց Պաւղոսի, Անտոնի, Պաւղեա, Մակարայ, Մեսրովբայ վարդապետի եւ ամենայն սրբոց հարցն եւ աշակերտելոց նոցին ընդ ամեղերս եղիցի յիշատակ: Թագաւորաց... Թէոդոսի, եւ ամենայն սրբոց եւ բարեպաշտ թագաւորացն եւ իշխանացն եղիցի յիշատակ սուրբ պա.: Ընդհանուր ամենայն սրբոց արանց... տղայոց, կենդանեաց եւ մեռելոց, եւ ամենայն չափու հասակի հաւատով եւ սրբութեամբ ի Քրիս. կատարելոյն եղիցի յիշատակ սուրբ պա.:

Եւ անդէն ընդ յիշատակին զատուցն, քահանայն ասէ խորհրդաբար զայս. Ցիշեա Տէր եւ ողորմեա եւ օրհնեա զսուրբ կաթողիկէ առաքելական եկեղեցի քո, զոր փրկեցեր պատուական արեամբ Միածնի... եւ որք ուղիղ...: — է յոյն — Եւս առաւել... (դայս անուն) շնորհեսցես...: Սարկաւագն յաջակողմն սեղանոյն յետ այսր ասէ յաղօթել քահանայէն է ծածուկ. Գոհութիւն եւ փառաբանութիւն... պատարագին... սեղանոյն Աստուծոյ... ի սրբութիւն եւ ի կենդանութիւն պարգեւեսցէ. զի սովաւ շնորհեսցէ զսէր եւ զհաստատութիւն... մերոյ եւ պատուական Հայրապետին Հայոց Տեառն այս անուն. եւ մերոյ եպիսկոպոսիս, այս, եւ քահանայիս որ զպատարագս մատուցանէ. եւ վասն զօրութեան եւ յաղթութեան թագաւորաց քրիստոնէից եւ իշխանաց. ազատութիւն... առաջիկայ... ննջեցելոց: Ժողովուրդն. Ըստ ամենայնի...:

Քահանայն. Ցիշեա... կացեալ ժողովուրդքս եւ զպատարագիս մատուցողքս, պարգեւեա սոցա զպիտոյսն եւ զօգտակարսն.... սրբոյ, եւ զորս յիշեն զաղքատսն ողորմածութեամբ եւ հատո զպարտս նոցա հարիւրապատիկ առս եւ... հանգուցելոցն, հանգո զնոսա եւ լուսաւորեա ընդ սուրբս քո յարքայութեանդ երկնից եւ արժանի արա ողորմութեան քում: Ցիշեա, Տէր, եւ զհոգի ծառայիս քո այս անուն, եւ ողորմեա նմին ըստ մեծի ողորմութեան քում, եւ հանգո այցելութեամբ ի լոյս երեսաց քոց: Ցիշեա... յանձնեցին մեզ յիշատակել... զհանգուցեալս: Կատարեա... ընդ ուղիղն եւ... բոլորեցուսցես... յընդունակութիւն... եւ Փրկչիդ Ցիս. Քրիս. — է յոյն — Ընդ որում քեզ... փառք, իշխանութիւն: Ժողովուրդն. Ամէն:

Քահանայն դառնայ խաչանիշ զժողովուրդն օրհնել՝ Եւ եղիցի... ընդ ձեզ †[1] ընդ ամենեսեան: Ժողովուրդն. Եւ ընդ հոգ.: Սարկաւագն քարոզէ. Եւ եւս խաղա.: Ժողովուրդն. Տէր ողորմ.: Սարկաւագն. Վասն մատուցեալ... եւ աստու. պատար... յիմանալի խորանն, զՏէր: Փոխանակ առ մեզ... Հագայն սրբոյ զՏէր: Ընկալ, կեցո եւ ողորմեա եւ պահեա զմեզ աստուածային քո շնորհիւդ: Զսրբուհին Աստուածածին զօրհնեալ տիրուհին եւ զմիշտ կոյսն Մարիամ յիշեսջիք եւ զամենայն: Եւ եւս միաբ.: Զանձինս: Ողորմ.:

Եւ անդէն ընդ քարոզութեանս, քահանայն քաղցրաձայն խորհրդաբար աղօթէ. Աստուած ճշմարտութեան... զպարտաւորելոց մեծարեցեր 'զընութիւն... պայծառացուցեալ... ի մէջ սրբոյ եկեղեցւոյ քո (— մաշած է կարմրադեղով գրել՝ է յոյն —) Եւ տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր կարդալ զքեզ երկնաւոր Հայր երգել եւ ասել: Ժողովուրդն քաղցրաձայն երգեն. Հայր մեր... եղիցին Տէր կամք... եւ մի տար զմեզ... ի չարէն:

Քահանայն աղօթէ ի ծածուկ. Տէր տերանց, Աստուած աստուծոց, թագաւոր յաւիտենից, արարիչ ամենայն արարածոց Հայր Տեառն մերոյ Ցիսուսի Քրիստոսի, մի տար զմեզ ի փորձութիւն եւ մի ի դատապարտութիւն, այլ փրկեա ի չարէն եւ ապրեցո ի փորձութենէ: — Ի յոյն — Զի քո է արքա... փառք Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյդ այժմ եւ միշտ: Քահանայն. Խաղաղու: Ժողովուրդն. Եւ հոգւոյդ: Սարկաւագն. Աստուծոյ երկրպագ.: Ժողովուրդն. Առաջի քո:

Եւ խոնարհել քահանայն եւ ամենայն ժողով. Եւ ի խոնարհելն ասէ քահ. ի ծածուկ: Որ աղբիւրդ եւս... ողորմութեան, ողորմեա... պագանեն աստուածութեանդ... զնոսա... յոգոց... մարմնոցն... հանդերձելոցդ բարեաց... Հոգւոյդ որ... ամենակալի վայելէ

[1] Այս խաչանիշն ալ բուն առաջին գրողին կը վերաբերի:

փառք իշխանու.: Ժողովուրդն. Ամէն: Քահանայն դարձեալ խոնարհէ, եւ ասէ ի ծածուկ. Նայեա... Թագաւորութեանդ քո... որ ի վեր ընդ... եւ աստ ընդ մեզ աներեւութաբար գոլով պատարագիս... արժանաւորեա հզօր ձեռամբդ տալ մեզ... մարմնոյ քո... արեանդ եւ ի ձեռս մեր...:

Եւ երկրպագեալ երեքս մատուցեալ համբուրէ զսեղանն ասելով. Բարձրեալ ես դու յերկինս Աստուած եւ յամենայն: Եւ առնու էջեան զսուրբ հացն: Սարկաւագն ձայնէ. Պռոսխումէն: Քահանայն բարձրացուցանէ զՍրբութիւնն եւ ասէ. Ի սրբութիւն սրբոց: Ժողովուրդն. Միայն սուրբ, միայն Տէր, Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հօր ամէն: Քահանայն. Օրհնեալ Հայր սուրբ... Օրհնութիւն եւ փառք... եւ սուրբ Հոգ.: Ժողովուրդն. Հայր սուրբ, Որդիդ սուրբ, Հոգիդ սուրբ. օրհնութիւն Հօր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն եւ այժմ եւ միշտ: Քահանայն առնու զհացն եւ ասէ. Ի սուրբ, ի սուրբ, ի սուրբ մարմնոյ եւ... յոյս, յարութիւն...:

Սարկաւագն. Սաղմոս ասացէք... զի նմա վայելեն... ալելուք եւ երգք հոգեւորք, պաշտօնեայք...: Դպիրք երգեն եղանակաւ. Քրիստոս պատարագեալ (— բաշխի —)... առ մեզ կերակուր եւ սուրբ զարիւն... ալելուիա: Ճաշակեցէք... ալելուիա: Օրհնեցէք զՏէր յերկինս. ալ.: Օրհնեցէք զնա ի բարձունս. ալ.: Օրհնեցէք... ալ.: Օրհնեցէք զնա ամենայն զաւրութիւնք նորա. ալէ.:

Եւ յերկիւղի բաշխէ քահանայն, եւ առեալ մասն մի համբուրէ, եւ արկանէ ի բաժակն ասելով. Լրումն Հոգւոյն սրբոյ: Դարձեալ երեքս երկրպագէ. եւ թողութիւն խնդրէ, համբուրէ զսեղանն եւ ասէ. Մարմին կենարար եւ անմահ Որդւոյն Աստուծոյ բաշխի ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց մերոց: Եւ առեալ ասէ երեքս. Խոստովանիմ եւ հաւատամ, զի դու ես Որդի Աստուծոյ՝ որ բարձեր զմեղս աշխարհի:

Եւ հաղորդեալ ճաշակէ ի բաժակէն ինքն եւ որք ընդ իւր: Սարկաւագն առնու եւ դառնայ ի ժողովուրդն եւ ասէ. Երկիւղիւ եւ հաւատով յառաջ մատիք: Օրհնեալ որ գալոց ես անուամբ Տեառն: Աստուած մեր երեւեցաւ մեզ: Օրհնեալ: Եւ հաղորդին: Յետ հաղորդելոյն խաչակնքէ քահանայն զժողովն. եւ ասէ. Կեցո, Տէր զժողովուրդս քո... յաւիտեան:

Սարկաւագն յետ ճաշակմանն տանի զսպասն ի սարկաւագատունն: Եւ քահանայն լուանայ զձեռսն: Դպիրքն. Լցաք ի բարութեանց... փառք ի: Սարկաւագն. Եւ եւս խաղաղութեան: Եւ եւս հաւատով ընկալեալ յաստուածային, սուրբ եւ յերկնային, յանմահ, յանարատ եւ յանապական խորհրդոյս, զՏէր գոհացարուք: Ժողովուրդն. Գոհանամք զքէն, Տէր:

Քահանայն. Գոհանամք զքէն, Քրիստոս Աստուած մեր, որ զայսպիսի... զմեւք... խնամօքդ. հովուեա յանդաստանի... անեղի յարքայութեանդ երկնից — է յայն — Աստուած եւ Տէր եւ Փրկիչ... եւ ընդ Հոգւոյն սրբոյ...:

Քահանայն իջանէ ի մէջ տաճարին, եւ ասէ. Խաղաղու.: Սարկաւագն. Աստուծոյ երկրպագես.: Քահանայն է յայն. Որ օրհնես զայնոսիկ... զյուսացեալսն... ամն քո. դու զմեզ փառաւորեա աստուածային զօրութեամբդ քո, եւ մի թողուր..: ի քեզ. զխաղաղութիւն... թագաւորաց մերոց, եւ զինուորեալ մանկանց նոցա եւ ամենայն ժողովրդեանս, զի ամենայն տուրք բարիք... եւ քեզ վայելէ փառք...: Սրկ. Եղիցի անուն Տեառն օրհն.:

Քահանայն. Կատարումն օրինաց... սրբով: Ժողովուրդն. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամէն... է լման առ: Բաշխին նշխարն ժողովրդոցն, ընդ առնմանն, եւ ի կատարմանն քահան. խաչակնքէ եւ ասէ. Օրհնեալ եղերուք... ամենեսեան: Դառնայ յարեւելս երկրպագէ առաջի սրբոյ սեղանոյն եւ ասէ. Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր, ողորմեա մեզ: Եւ մտեալ ի սարկաւագատունն, մերկանայ ի զգեստուցն, եւ առաջի սեղանոյն երկրպագէ երեքս, եւ երթայ խաղաղութեամբ:

## 2.

*Ըստ Լամբրոնեան Օրինակին:**

---

### Ա.

### ԱԶԴՈՒՄՆ ԵՒ ՊԱՏԱՐԱԳՆ ԱՌ ՅՈՎՀ· ԱՐՃԻՇԵՑՒՈՅ

Շատ անգամ առիթ ունեցանք արդէն Լամբրոնացւոյ մեր գրականութեան մէջ ամէն կողմանէ նշանաւոր գործքին վրայ խօսելու եւ իւր գործոյն մէջ գըտնուած յատուկ Պատարագամատոյցը, որ միակ օրինակէ մը լոյս տեսած է, յիշելու:[1] Յիշեցինք նաեւ նորին իսկ Լամբրոնացւոյ խօսքերը, որոնք կը ցուցընեն արդէն այն Պատարագամատուցին ինչ ըլլալը, այսինքն հիմնական մասն՝ Աթանասի կոչուածը, նախերգանը՝ Ոսկեբերանի անուանուածը, սակայն իւր ամբողջութեամբը յատուկ նկարագիր մ'ունենալով: Վերը խօսած ըլլալով[2] Լամբրոնացւոյ ճգանց վրայ, որով բիւզանդեան "առաւելութիւնն" փոխադրեց Հայոց, հոս չենք կրկներ:

Ամէն պէպքի մէջ Լամբրոնեանն ամենամեծ ազդեցութիւնն ունեցած է մեր արդի Պատարագին վրայ: Ասով նախնական Խոսրովեան կամ "Աթանասի" բնագիրն՝ որ դարերէ ի վեր գործածութեան մէջ էր Հայոց քով,[3] առաւ վերջնականապէս բիւզանդեան նկարագիր՝ անթիւ նոր յաւելուածներ ընդունելով, եւ քիչ շատ փոփոխութեամբ յանգելով ի վերջոյ մեր Սովորականին: Վերջապէս մեր նպատակին համար՝ որ Հայոց Պատարագամատուցաց պատմութիւնը լուսաւորելու ջանացինք, շատ կարեւոր յիշատակարան մըն է Լամբրոնեան խորհրդամատոյցն, որ անժխտելի վկայ մըն է մեր պատարագին ունեցած ներքին փոփոխութեան ԺԲ դարուն՝ ամէնէն ուշ 1192ին: Պէտք է միայն համեմատել այս բնագիրն, զոր յաջորդով կը հրատարակենք ընդարձակ համեմատութեամբք ձեռագրաց՝ նախընթաց Խոսրովեան եւ Ոսկեբերանի նախագործութեանց, ինչպէս նաեւ Սովորականին հետ՝ զոր նոյնպէս յաջորդ գլխով կը հրատարակենք, որպէս զի պայծառ գաղափար մ'ունենանք իրաց այն ընթացքին ու այն հետզհետէ զարգացման՝ զոր կրած է Հայոց գործածած Պատարագի մատեանը: Եւ այս բաւական երկար շղթային անհրաժեշտ եւ կարեւորագոյն օղակն է Լամբրոնեանն:

---

* Այս Ազդումն եւ Լամբրոնեան բնագրի հրատարակութիւնը մեզմէ է: Մեծ. Հեղինակը զանց չէր ըրած Լամբրոնեանն, սակայն դրած էր սա ալ այնպէս՝ ինչպէս Նախընթաց Վատիկանեան օրինակն, այսինքն Վենետկոյ 1847ի տպագրուածը (N) համեմատելով Սովորական Պատարագին հետ, տարբերութիւնքն նշանակած էր՝ մնացեալները կէտերով նշանակելով. բաց աստի հանդիսականի եւ ձեռնադրութեան մասերը ամբողջովին դուրս թողուած էին: Նկատելով Լամբրոնեան պատարագին կարեւորութիւնը մենք լիակատար դրինք նոյնը, եւ համեմատեցինք MA, N· եւ A բնագիրներուն հետ, կցելով սկիզբն այս Ազդումն ալ: ՀՐՏՐ.

[1] Տես վերն էջ 175—76, 270, 349 եւն:

[2] Տես էջ 349—51:

[3] Տես վերն էջ 268—71, 319—40:

*Այս պատճառաւ չենք կարծեր որ աւելորդ երեւայ հոս լիակատար ամբողջութեամբ տալ Լամբրոնեան պատարագի բնագիրը, թէեւ առոլ մասամբ կրկնութիւններ ըլլալ ստիպուած ըլլանք։ Ստոյգ է՝ յաջորդ բնագրիս Ընծայեցէքն եւ նաեւ քարոզութիւնքն գրեթէ առանց բացառութեան կամ տեսանք արդէն Աթանասի*[1] *եւ Ոսկեբերանի քով*[2] *համեմատուած կամ պիտի տեսնենք մեր Սովորականին մէջ։ Բայց Լամբրոնեանն՝ իբր ամբողջութիւն առեալ՝ շատ կը տարբերի թէ՛ նախընթացներէն եւ թէ՛ հետեւորդէն, թողլով նաեւ նոյն մասերու ընթերցման շատ կարեւոր տարբերութիւնները։ Բաց աստի՝ եթէ հոս չդնէինք բնագիրս, պիտի ստիպուէինք մեր Սովորական Պատարագին ներքեւ դրուած ընթերցման տարբերութիւնքն կրկնապատկել ու եռեքպատկել՝ Լամբրոնեանի եւ նոյն կարգի վերաբերող* MA *ձեռագրի եւ* A *(Արճիշեցւոյ) բնագրաց ընթերցուածները նշանակելով, որ շատ տեղ կարելի ալ չէ։ Վասն զի Լամբրոնեանն սա առաւելութիւնն ալ ունի որ շատ երկար տեղեկագիր-խրատագիրներ ունի Հանդիսական եւ Յետ-նախընթացեան պատարագի, որոնք չկան ուրիշ որեւէ խորհրդամատոյց-ձեռագրի մէջ, որչափ մեզի ծանօթ է։*

*Յաջորդ բնագրին հիմն է ըստ այսմ այն պատարագն, որ լոյս տեսած է Լամբրոնացւոյ մատենագրութեանց մէջ մի միակ օրինակէ մը։*[3] N *համառօտութեամբ կը նշանակենք այս օրինակը, զոր հաւատարմութեամբ պահեցինք յաջորդին մէջ ալ, թէեւ տեղ տեղ յայտնապէս աղաւաղութիւններ կը տեսնուէին՝ ինչպէս ներքեւ դրուած համեմատութիւններէն ալ կրնայ ստուգուիլ։ Մանրամասնութիւնքն ի բաց առեալ՝ ընդհանրապէս բնագիրս համարելու ենք վկայ մեր խորհրդատետրին այն ձեւին, զոր առած էր ԺԲ դարուն վերջերը Լամբրոնացւոյ խնամովք* 1192*էն յառաջ։*[4]

---

[1] Կամ Խոսրովեան բնագիրը եւ Լամբրոնեան խմբի աղօթքները համեմատուած ձեռագրաց տարբերութեանց մէջ, տես վերն էջ 272—99։

[2] Ոսկեբերանինը տես վերն էջ 353—382, ուր նաեւ N եւ MA բնագրաց համեմատութիւնքը։

[3] "Սրբոյն Ներսիսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպ. Խորհրդածութիւնք ի կարգս եկեղեցւոյ եւ Մեկնութիւն խորհրդոյ պատարագի," Վենետիկ 1847 (8⁰ էջք 557), էջ 193—226, ինչպէս հրատարակիչը կը ծանուցանէ՝ "ի միոյ հին օրինակէ։" Յառաջաբանէն կ'իմանանք որ երեք օրինակ գործածուած են տպագրութեան համար. մին բոլորգիր ՉԾԵ (= 1306) թուին գրուած Արճիշոյ Զորոյ վանքը, միւսը նոյնպէս բոլորգիր ՉՁԱ (= 1332) թուին Կուքայ վանքը, եւ երրորդը՝ նոտրգիր երանելոյն Կոմիտասայ ձեռօք գրուած։ Չենք գիտեր սոանց որն է այն "մի եւեթ" օրինակը։ Ձեռագիր ցուցակի մը համեմատ՝ 1847էն առջն երեք նոտրգիր ձեռագիր ալ Պատարագի Մեկնութեանս հասած է Վենետիկ, որոնց մէջ սակայն չենք կարծեր որ Խորհրդատետրը գտնուի։ Պատարագի Մեկնութեան ձեռագիրք ցանցառ չեն, բայց Խորհրդատետրը կը պակսի առ հասարակ. այսպէս մեր գրատան թ. 24, 237, 321, 473 եւն ձեռագիրները. (տես Ցուցակ, էջ 143, 619—20, 765, 949։)

[4] Աւելորդ չենք համարիր դնել հոս "Սրբոյն Ներսիսի Յիշատակարան," որ լոյս կը սփռէ "Խորհրդածութեանց" եւ Պատարագի Մեկնութեան, ուստի իւր խորհրդատետրին կազմութեան ժամանակին եւ կրած արկածից մասին. (տես տպ. Վենետ., էջ 556—57, Ցուցակ մեր Ձեռ., էջ 140։) Յիշատակարանս է՝ "Այս բանք եւ աստուածային օրինադրութիւնք՝ սպասաւորութեան մտաց եւ ձեռին իմոյ թշուառ Ներսէսի ասացաւ ի Հոգւոյն Աստուծոյ ի նախագրեալ թուականիդ՝ վեցհարիւր քսան եւ վեցի (= 1177), եւ ի ժամանակ կենաց մերոց մինչ էի քսան եւ չորս ամաց, եւ կայի ի լաւութեան եւ ի միայնութեան ի մէջ լերանցն Տօրոսի։ Իսկ յետ ամաց ինչ դարձեալ ածայ յեկեղեցական պաշտօն եւ ի մարմնական գործով զբաղանք. եւ զհուր տաշարման սրտի իմոյ որ ի բանքս ցուցաւ՝ հնարէի եւ յայլս բորբոքել, եւ ըստ բանիս գործ գլխաւորել, եւ անկարանայր այս։ Քանզի մի անգամ եւ երկիցս հանի զսոյն յատեան եւ ի ժողովս եպիսկոպոսաց եւ իշխանաց, եւ ոչ եղեւ

*Բայց մի՛ միայն՝ ինչպէս կը համարուէր, չէ աս ալ։ Նոյն բնագիրը՝ քիչ շատ տարբերութեամբ՝ կայ արդէն Մխիթարի Հեռագրին մէջ, ինչպէս արդէն վերը նշանակեցինք եւ նաեւ համեմատութեանց մէջ գործածեցինք, Մխիթարայ անուամբ (երկրորդ ձեռովը։[1]) Այս երկրորդ վկայն MA համառօտութեամբ կը նշանակենք, որ իւր այս ձեւին մէջ 1289էն ետքը չի կրնար ձգուիլ, որ տարին գրուած է Մխիթարի հաւաքման գաղափարը։ Ըստ այսմ Լամբրոնացւոյ ժամանակէն հազիւ դար մը կյտնեի ձեռագիր մըն է, եւ իբր այսպիսի մեծ արժէք ունի իւր վկայութիւնը։ Նոյն կան հոս հոն յաւելուածներ եւ տարբեր ընթերցուածներ, որ թերեւս՝ համեմատելով Nի ընթերցմանց՝ կյտնեի երեւան ծագմամբ, ասոնք ալ արդէն ԺԳ դարու ընթացքին մէջ երեւան եկած ըլլալու էին։ MA ուրիշ շատ տեղեր Nի թերի եւ աղաւաղ մասերը կը լրացնէ եւ կ՚ուղղէ։*

*Այս երկու բնագրաց համեմատութիւնն ինքնին կը բաւէր Լամբրոնեան պատարագը եւ շատ շատ անոր յաջորդ դարուն մէջ առած քանի մ՚եղանակաւորումները մեր առջեւ դնելու։ Բայց մեր յաջորդ համեմատութեանց մէջ երկու ուրիշ համառօտութիւն ալ յաճախ գործածած ենք, այսինքն N² եւ A։ Առաջինը (N²) կը ցուցընէ այն բնագիրը, զոր նոյն ինքն Լամբրոնացի Պատարագի մեկնութեան մէջ յառաջ կը բերէ տող առ տող՝ հիւսելով իւր պարզաբանութեանց,[2] ուստի ոչ այն անկախ բնագիրը (N) որ "Խորհրդածութեանց„ վերջը եւ Պատարագի մեկնութեան առջեւը դրուած է Վենետկոյ տպագրութեան մէջ. (էջ 193 եւն։) Բնական էր որ մեկնութեան այն բնաբանները (N²) քաղելով՝ ելլէր Լամբրոնեան կոչած բնագիրը (N.) թէեւ շատ պակասաւոր, քանի որ ինքնին կը հասկցուի որ մեկնիչը բնագրի ամէն մանր մասերն ալ մեկնութեան արժանի չէ տեսած ու չէ պարզաբանած։ Յաջորդ համեմատութեանց մէջ աւելորդ համարեցանք ըստ այսմ N²ի (նոյնպէս Aի) թերցուածները նշանակել կամ այն տեղերն՝ զոր Լամբրոնացի չէ մեկնած, զոր օրինակ խրատագիրներն, երկար տեղեկագիրքն եւն։ Համեմատուած են միայն այն բնաբանները որ կը գտնուին նոյն մեկնութեան մէջ, եւ ասոնք տեղ տեղ ճառական փոքրիկ*

---

պարապուն գոնէ ընթերցման կամ ուսնկնդրութեան։ Եւ ի սոյն ժամանակս ի թուականութեանս վեցհարիւր եւ յերեսուն եւ վեցին (= 1187) յափշտակեցաւ սուրբ քաղաքն Երուսաղէմ ի Թուրքաց ազգէ, եւ եկեղեցականքն եւ իշխանքն՝ որք սպասաւորէին սուրբ տեղեացն գերեցան. եւ համբաւս այս հասեալ յարեւմուտս՝ զինեալ ազգաց թագաւորք եւ իշխանք՝ ըստ հրամանի Հռովմայ հայրապետին՝ շարժեցան գալ յայս աշխարհս։ Եւ մինչ նոքա հեղուին անթիւ բազմութիւնք նաւօք ի ծովէ անտի ի Պաղեստինեայ, ի թուականութեան ի վեցհարիւր յերեսուն եւ ութն (= 1189), յղեաց իշխողս մեր մեծ Լեւոն զմեզ առ կաթուղիկոսն սուրբ Տէր Գրիգոր յաթոռն հայրապետական որ կոչի Հռոմկլայ ի վերայ Եփրատայ. եւ ի գնալ մեր յաւուրս պենտակոստէից յայնկոյս Մարաշոյ, յարձակեցան ի վերայ մեր Թուրքմանք (տպ. Վենետ. "Թուրքի Մարք„) եւ որով ճարակեցին զորս ընդ մեզ կրօնաւորք եւ աշխարհականք (Թ. 55 եւն "քահանայք„) ոգիք իբրեւ քսան. յափշտակեցին ընդ այլ ինչսն եւ գրեանս, ի վերայ որոյ ոգւոյ անմխիթար լալովք հառաչէաք։ Իսկ արդ ի տեսչութենէ գթութեան Աստուծոյ ի թուին վեցհարիւր քառասուն եւ մէկ (= 1192), քննեալ՝ ուր վաճառեալ էին, դարձուցաք զայն ի [illegible] [illegible]. քանզի գտաւ ի գաւառն Ջահնոյ, եւ ստացուածութեամբ եպիսկոպոսի գաւառին Նկրոեսի եւ Վարդանայ կրօնաւորի՝ ածաւ այն առ իս վերստին. եւ եղեւ վշտացնեալ ոգւոյ իմոյ մեծ սփոփանք եւ մխիթարութիւնք, եւ առ Աստուած երկրպագութեան գոհութիւն։ Փառք ամենասուրբ Երրորդութեան„ եւն։

[1] Տես վերն՝ էջ 85, § 2—3, եւ էջ 270, § 5։

[2] Տպ. Վենետ. 1847, էջ 227—516։

*բնագիր մը մեր առջեւ կը գտնէր։ Այս երեւոյթն ալ դիւրաւ կը մեկնուի։ Լամբրոնացի աշխատած է բիւզանդական պերճութիւններով վերջնականապէս պատուաստել հայկականը, (նոյնն արդէն սկսուած էր իրմէ յառաջ ալ, ինչպէս Վատիկանեան օրինակը ցուցուց,) եւ այսպէս կազմած իւր Պատարագամատոյցն* (N *կոչածնիս)։ Միւս կողմանէ՝ երբ մեկնութիւնը կը գրէր՝ շատ բնական էր որ գրչէն ելլէին տեղ տեղ դարձուածներ եւ նախադասութիւններ այն խորհրդատետրէն, զոր Հայք եւ ինքն ալ կը գործածէին տակաւին այն ատեն, երբ իւրը չէր աւարտած կամ գոնէ չէր ըրած այն ազդեցութիւնը, զոր յետոյ ունեցաւ։ Այս է նաեւ* N²*ի նկարագիրն. յընդհանուրն նոյն* N*ի հետ, բայց նաեւ նկարագրական տարբերութիւններով, որոնք ըստ այսմ մեծ յարգ ունին. այնչափ աւելի որչափ որ ատոնք կղզեացեալ չեն սովորաբար, կամ Խոսրովեանի, կամ նաեւ այժմու. սովորականին եւ կամ գոնէ* MA*ի համաձայն գտնուելով։*

*Ինչ որ ըսինք* N²*ի մասին՝ կ'արժէ նաեւ* A*ի կամ այն բնագրին, զոր կը քաղենք Յովհաննու Արճիշեցւոյ համառօտած պատարագի մեկնութենէն՝* MA*ի ժամանակները, այսինքն ԺԳ դարու յօրինուած։ Կ'արժէ Արճիշեցւոյ բնագրին մասին մէկ երկու խօսք ըսել։*

*Յովհաննու Ոսկեբերանի Պատարագի մեկնութիւնը ցանցառ գտնուող գործքերէն չէ. եւ արդէն երեք անգամ՝ ալ հրատարակուած է տպագրութեամբ՝ Կ.Պոլիս* 1717*ին եւ* 1799*ին, եւ Կալկաթա* 1830*ին, որոնց յիշատակարանքն ալ հաղորդուած են "Հայկ. Մատենագիտութեան" մէջ։*[1] *Այս տպագրութեանց մին միայն այժմ առձեռն ունիմ, բայց ասոր տեղ շատ յարգի ձեռագիր մը՝ Թ.* 174 *մեր Մատենադարանին, զոր նորոգած է եւ առաջին չորս թղթերը նոր գրած Դաւիթ անուն մէկը ՌՃԻԴ* (= 1675) *տարին, բայց բուն գրութիւնը շատ հին է՝ գոնէ երկու երեք դար կանուխ քան նորոգման տարին։ Այս ձեռագրին ընթերցմունքն են՝ զորոնք* A *համառօտութեամբ կը նշանակենք։*[2] *Մեր մատենադարանին մէջ կայ երկրորդ օրինակ մ'ալ՝ Թ.* 466*՝ իբր ԺԻ—ԺԸ դարերէն (զոր* A² *կը նշանակենք,) բայց որեւիցէ կերպով չի կրնար համեմատուիլ առաջնոյն հետ,*[3] *եւ բաւական ալ սխալագիր է. ուստի ասոր ընթերցմունքն ալ մի առ մի համեմատել պէտք չտեսանք։ Ձեռագիրներ չեն պակսիր նաեւ այլուր, որոնց մէջ կը յիշենք հոս միայն Փարիզու Ազգային Մատենադարանի հայկական ձեռագրաց Թ.* 29 (Cod. Arm. 29, *Պարոնեան՝ Թ.* 85, *Մարտէն Թ.* 91,) *թղթեայ նօտրագիր օրինակ մը* (196 *թուղթք,* 22×17 *սնթմ., միասիւն՝* 15×9·5, *տողք* 25,) *"մօտ ԺԻ դարու" գրուած ըստ ցուցակագրին*[4] (*եւ արդէն* 1730*ին Եւրոպա եկած։*) *Ձեռագրիս մէջ գործքին խորագիրն է (Թղ.* 1*ա) "Տեսութիւն սուրբ Պատարագին* Յոհաննու Արճիշեցւոյ," *եւ վերջն երկու յիշատակարան ունի՝ որ կը պակսին մեր ձեռագրաց մէջ։ Առաջինն է (Թղ.* 195*բ) "Յիշատակարան* Խոսրովու," *արդեամբք այն՝ որ կայ Անձեւացեաց եպիսկոպոսի գրութեան ծայրը՝ քիչ շատ փոփոխուած։*[5] *Աւելի կարեւոր է երկրորդը որ*

---

[1] Տպագրութեանց յիշատակարանքը տես Հ. Գր. Զարբհ., "Մատենագիտ." էջ 463—65։

[2] Տես ասոր վրայ Ցուցակ, էջ 490. (Թ. 174,[1]։)

[3] Տես Ցուցակ, էջ 941. (Թ. 466,[1]։)

[4] Ձեռագիր Ցուցակ Մեսրոպ Վրդ.ի Տէր-Մովսիսեանց. (Համմ. վերն էջ 471, ծան. 3։)

[5] Տես տպ. Վենետ. 1869, էջ 66—67. Ցուցակ մեր ձեռագ., էջ 707, եւ վերն գործքիս մէջ՝ էջ 269։

“Սրբոյն Ներսէսի յիշատակարան„ խորագիրը կը կրէ (Թղ. 196ա) եւ է հետեւեալը. “Գրեցաւ ի թվականիս ՉՃԻԶ (= 1276, անշուշտ կարդալու է ՁՃԻԶ = 1177) յանապատ սուրբ Գէորգայ ի մէջ լերինս Տօրոսի ի Գահ Կիլիկիոյ եւ ի սկիզբն Պամփիւլեայ, ի կաթուղիկոսութեան Տեառն Գրիգորի եւ իշխանութեան Հեթմոյ Սեւաստոսի, վերջ գլքոյս եղեւ Փետրվարի ԺԶ։„ Յայտնապէս այս յիշատակարանը Լամբրոնացւոյ մեկնութեան հնագոյն եւ բնագիր ձեռագրինն էր (— ինչպէս քիչ մը յառաջ տեսանք, Լամբրոնացի գրած էր 1177ին, իւր գրած մէկ օրինակը գերուած էր 1189ին եւ կրկին գնուած 1192ին. —) զոր առջեւն ունէր ըստ այսմ Արճիշեցի եւ ոչ երկրորդական օրինակ մը։[1]

Զարմանալի ալ չէ որ Յով Հ. Ոսկեանէր թէ Խոսրովու եւ թէ Լամբրոնացւոյ մեկնութեանց յիշատակարանները գրած է իւր երկասիրութեան վերջը։ Արդէն իւր գործքը ծայրէ ծայր ուրիշ բան չէ, բայց համառօտումն եւ քաղուածք յիշեալ երկու մատենագրաց երկերէն։ Ինքն իսկ Արճիշեցի կը յայտնէ այս բանս բացայայտ գրելով իւր գրութեան ներածութեան վերջը.[2] “Վասն որոյ մեծն Խոսրով, հայրն Գրիգորի Նարեկացւոյ նախ, եւ Ներսէս վերատեսուչն Տարսոնի յետոյ, ընդարձակ եւ պայծառ քննութեամբ ետուն մեզ զՄեկնութիւն Պատարագիս։ Բայց են ոմանք զի զդժուարութիւն բանիցն պատճառեն, եւ կէսք՝ զնրբութիւն. եւ անօգուտ մնան. թէպէտ եւ չէ ինչ յոյժ ծածուկ բանք նոցին։ Յաղագս այսորիկ յեռնեալս ի բարեաց, ծնունդս վերջին ժամանակիս, Յոհաննէս Արճիշեցի, թախանձեալ յոմանց քահանայից սրբազգեցից՝ տալ նոցա վերստին համառօտ եւ դիւրին բանի զտեսութիւն խորհրդոյս. եւ մեք հարկեալ ի նոցունց՝ ձեռնարկեցաք ի սոյն, յուսալով ի Հոգին սուրբ եւ յաղօթս սրբոց, ոչ թէ յաւելուած ինչ իմաստից խառնելով ի մէնջ ի բանս մեկնութեան նախասացեալ արանցն, այլ միայն զբանս նոցունց կարճեալ դիւրեցաք. զոր թէ հաճելի իցէ ձեզ՝ Տեառն շնորհ. եւ թէ ոչ՝ եւ նոյնպէս շնորհ. միայն անպարսաւմնացից ի պատահելոցդ։„

Ասկէ արդէն կը տեսնուի որ Արճիշեցւոյ մեկնած Պատարագի բնագիրը չէր կրնար շատ շեղիլ Լամբրոնացւոյ մեկնութեան մէջ գտնուածէն։ Յաջորդ համեմատութեանց միտ դնողը կը տեսնէ ալ որ արդեամբք A մեծաւ մասամբ կը համընթանայ N²ի՝ աղօթքներու եւ քարոզութեանց մէջ։ Սակայն կէտ մը կայ, ուր Արճիշեցւոյնը շատ մեծ շեղումներ կը ցուցընէ։ Եւ այս կէտն է խրատագրոց ամբողջութեան բաւական մեծ տարբերութիւն ունենալը. պատարագի մասերն ալ մէկ քանիին կարգի եւ շարադասութեան տարբերութիւն կը ցուցընեն։ Վերջապէս անհրաժեշտ կը տեսնենք դնել հոս A խմբի պատարագի կմախքը՝ գլխաւորաբար խրատագիրներուն, զորոնք ատոր համար չենք դրած արդէն Լամբրոնեան Պատարագի համեմատութեանց մէջ։ Աղօթքներուն եւ քարոզութիւնքն

---

[1] Այս յիշատակարանը՝ կ'երեւայ՝ ոմանց առիթ տուած է կարծելու թէ Մեկնութիւնս Ներսէսի Շնորհալւոյ գործքն ըլլայ։ Աս կը հետեւի Brightmanի (Liturgies, etc. p. C) մէկ ծանօթութենէն, ուր կը յիշէ թէ ցուցակին մէջ Ներսէսի Դ. (Շնորհալւոյ) տրուած է այս։ Ահա իւր խօսքը՝ The commentary in Paris Arm. 29 described as of S. Nerses IV (Schnorhali Clayetsi † 1172) is in fact a compilation from Chosroes and Nerses of Lambron by John of Arjesh (XIIIth cent.) Չենք գիտեր փարիզի որ ձեռագիր ցուցակը կ'ակնարկէ հոս Պրայթմըն։

[2] Թ. 174, Թղ. 4ա—5ա. Թ. 466, Թղ. 1բ¹—2ա¹։ Տես Ցուցակ, էջ 490։

հոս չենք կրկներ եւ կը շատանանք միայն սկզբան բառերն յիշելով. արդէն համեմատուած են ատոնք Լամբրոնեան ծանօթութեանց մէջ:

Յաջորդ ուրուագրին, զոր քաղեցինք Արճիշեցւոյ մեկնութենէն, հիմն է մեր գրատան Թ. 174 հին ձեռագիրը (A): Ուր պէտք էր, համեմատած ենք նաեւ Թ. 466 ձեռագրի (A²) եւ Կ.Պոլսոյ 1799ի տպագրութեան[1] (A³) տարբերութիւնքն ալ: Բուն Լամբրոնեան պատարագի համեմատութեանց մէջ պէտք չտեսանք A² եւ A³ համեմատելով խճողել ծանօթութիւնքն եւ երկարել անօգուտ կերպով:

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ ԱՌ ՅՈՎՀ. ԱՐՃԻՇԵՑՒՈՅ

Ի զգենուլ հանդերձին՝ ասեն սաղմոս բատ խորհրդոյն՝ Յիշեա Տէր զԴաւիթ, եւն: Քարոզէ սարկաւագն՝ Խնդրեսցուք հաւատով, եւն: Ժողովուրդն ասէ՝ Տէր: Սարկաւագն՝ Ողորմեա մեզ: Աստուած մեր: Ժող. Գ. Տէր ողորմեա: Քահանայն միաբանի աղօթից նոցա եւ ընդանեբար խօսի ընդ Քրիստոսի՝ ասելով. Որ զգեցեալ ես զլոյս որպէս հանդերձ, եւն:

Եւ յետ զգենլոյն՝ գայ առաջի սրբոյ սեղանոյն, եւ անկեալ ի վերայ երեսացն ասէ զաղօթս զայս[1] առ սուրբ Հոգին, զոր ասացեալ է սուրբ հօրն Գրիգորի Նարեկացւոյ արտասուօք...: Աղօթք. Ամենակալ Աստուած Բարերար, եւն: Գործեալ կրկնեսցի նոյն կարգ բանի, մինչեւ վերահայեցութիւն լուսոյն հրաշափառ աղդեալ յայտնեսցի աւետարանել... Աղաչեմ եւ աղերսեմ, եւն:

Ապա յարուցեալ գայ առընթեր ընծայարանի սեղանին:[2] Եւ որ մատուցեալ նախասարկաւագն նշխար, եւ առեալ դնէ ի մաղզմայն ասելով. Յիշատակ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Եւ առեալ զգինին՝[3] Յաղագս յիշատակի փրկագործութեան Տեառն Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ քահանայն ասէ զաղօթսն[4] սրբոյն Յոհաննու Ոսկեբերանին. Աստուած Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ, եւն:

Եւ ապա մատուցեալ սարկաւագն ծածկէ դաստառակաւ ասելով. Տէր թագաւորեաց, վայելչութիւն զգեցաւ: Եւ տուեալ խունկ ի ձեռս քահանային ընթեր կալով. եւ նա առեալ...:[5] Աղօթք. Խունկ մատուցանեմք առաջի քո Քրիստոս Աստուած, եւն:

[6] Յետ այսորիկ կատարիչ խորհրդոյն զայս հանդերձ քահանայիւքն, սարկաւագօքն եւ դպրօքն, մոմեղինօք լուցելովք եւ անուշահոտ խնկօք, մատանէ առաջի սրբոյ սեղանոյն սաղմոսելով՝ Մտից առաջի. եւ քահանայն երկրպագէ սեղանոյն, եւ կանգնեալ ասէ զաղօթս զայս. Տէր Աստուած մեր, որ կարգեցեր յերկինս դասս եւ զինուորութիւնս հրեշտակաց, եւն:

Եւ ապա մատուցեալ սարկաւագն խունկ

---

[1] Խորագիրն է. «Մեկնութիւն աղօթից խորհրդոյ սրբոյ պատարագին, արտահանեալ ի մեկնութեանց Խոսրովու Անձեւացեաց եպիսկոպոսի եւ Ներսիսի Լամբրոնացւոյ վերատեսչի Տարսոնի, կարճելով եւ պարզաբանելով ի Յոհաննու Արճիշեցւոյ», Կ.Պ. 1799, 12° էջք 216:

Պատարագի ուրուագծիս տարբերութիւնքն աւելի դիւրաւ գտնելու համար՝ հոս ալ պահեցինք աղօթքներն եւ քարոզները՝ սկիզբը միայն նշանակելով: A²-³ բնագրաց, ինչպէս նաեւ A-ի մանր մունր գրչագրական անճշդութիւնքն, սխալներն եւ այլազան տարբերութիւնք մի առ մի նշանակուած չեն հոս, որ արդէն մեր նպատակէն ալ դուրս էր: Միայն ուր A²⁻³ իրական եւ կարեւոր շեղում ունէին՝ դրած են յաջորդ ծանօթութեանց մէջ:

[1] A² չունի «զայս.» (= A³). քիչ մ'անդին ալ կը կարդայ «մինչեւ ի վերահայեցութեանն» եւն. իսկ A³ «մինչեւ լուսահոսութեան վերահայեցողութեանն լուսոյն» եւն:

[2] A²—³ «Քահանայն գայ առընթեր ընծայարանի խորանին» եւն:

[3] A³ «Եւ առեալ զգինին՝ արկանէ ի սկիհն ասելով. Յաղագս յիշատակի փրկագործ տնօրէնութեան» եւն:

[4] A² «զաղօթս.» իսկ A³ «ասէ է ծածուկ զաղօթս» եւն: Երկուքն ալ աղօթքը կը սկսին «Տէր Աստուած մեր, որ զերկնաւոր» եւն:

[5] A³ չունի «Եւ նա առեալ» խօսքը:

[6] Անկէ սկսեալ մինչեւ այս խօսքը «առաջի նորա ունելով կիսասարկաւագն զխնկանոցն» չունի A³, ոչ միայն խորագիրքս, այլ նաեւ մեկնու-

Պ––ա–ր–ա–է Քր–ի–ս–տ–ո–ս, ևլն: Ժող. Ողորմ–ու–թ–ե–ա–ն, ևլն: — Քահանայն դառնայ ի ժողովուրդն[28] և ասէ. Շ–ն–որհ–ք, ո–եր, ևլն: Ժող. Ե– ը–նդ հ–ո–գ–ւո–յ–դ ք–ո–ւ–մ: Սրկ. Ի վ–եր ը–նծ–ա–յե–ց–ո–ւ–ցե–ք,[29] ևլն: Ժող. Ո–ւ–նի–մ–ք, ևլն: Սրկ. Ե– գ–ո–հ–ա–ցա–ր–ո–ւ–ք, ևլն: Ժող. Արժ–ա–ն ե– ի–ր–ա–ւ:

Ասէ քահանայն. Արժ–ա–ն է ա–պ–ա–գ–ո–ղե–ւ ե– ի–ր–ա–ւ –ա–մ–ե–նա–յ–ո–ր–դ–ո–ր ջ–ա–ն–ի–վ–ղ, ևլն: ...Ե– ը–նդ ա–ե–ր–ո–վ–բ–ե–ա–ն, ևլն: Ժող. Ս–ո–ւ–ր–բ, ս–ո–ւ–ր–բ ...ո–վ–ս–ա–ն–ն–ա ի բ–ա–ր–ձ–ո–ւ–ն–ս:

Քհ.[30] Ս–ո–ւ–ր–բ, ս–ո–ւ–ր–բ, ս–ո–ւ–ր–բ ե– ճ–շ–մ–ա–ր–տ–ա–պ–ե–ս ե– ա–մ–ե–ն–ա–ս–ո–ւ–ր–բ: Ե– ա–վ ո– պ–ա–ն–ծ–ա–ց–ի, ևլն: Ա–ռ–ե–ա–լ շ–հ–ա–ց–ն... Ա–ռ–ե–ք կ–ե–ր–ա–յ–ք...: Նո–յ–ն–պ–ե–ս ե– զ–բ–ա–ժ–ա–կ–ն ...Ա–ռ–ե–ք ա–ր–բ–ե–ք ի ս–մ–ա–նե, ևլն:

[Քհ.] Ե– զ–ո–յ–ն մ–շ–տ ի–ւ–ր յ–ի–շ–ա–տ–ա–կ ա–ռ–ն–ե–լ, ևլն: [31] Ե– ա–ր–դ մ–ե– Տէր ը–ս–տ ա–յ–ս–մ հ–ր–ա–մ–ա–ն–ա–տ–ր–ո–ւ–թ–ե–ա–ն, ևլն: Զ–ք–ո–յ– ի ք–ո–յ–ո–ց–ո, ևլն:

Ժող. Ց–ա–մ–ե–նա–յ–ն–ի օ–ր–հ–ն–ե–ա–լ ե– Տէր, ևլն:

Քհն.[32] Զ–ե–ղ ա–ր–դ–ա–ր–ե– Տէր Ա–ս–տ–ո–ւ–ա–ծ մ–ե–ր գ–ո–վ–ե–մ–ք, ևլն: Ժող. Ե– ը–նդ հ–ո–գ–ւո–յ–դ ք–ո–ւ–մ: Սրկ. Ա–ս–տ–ո–ւ–ծ–ո–յ ե–ր–կ–ի–ր–պ.: Ժող. Ա–ռ–ա–ջ–ի ք– Տէր:

Քհ. խոնարհեալ երկրպագէ սեղանոյն և ասէ գաղտ. Երկիր պ–ա–գ–ա–ն–ե–մ–ք ե– ա–ղ–ա–չ–ե–մ–ք ե– խ–ն–դ–ր–ե–մ–ք, ևլն: [33] Որ–ո–վ շ–հ–ա–ց–ո † ա–ր–հ–ն–ե–ա–լ, ևլն: Ո–ր–դ–ե–ո վ–ի ե–ղ–ի–ց–ի ս–ա, ևլն:

Եւ համբուրէ քահանայն զսեղանն, և այսուհետև պձեռն հաւասար նուիրացն խոնարհեալ և զաչսն ի նոյն յառեալ ասէ անմռունչ զաղօթսն. Ս–ո–վ–ա– շ–ն–ո–ր–հ–ե–ա ղ–ո–ւ–ե–ր, ևլն: Ս–ո–վ–ա– ե– օ–դ–ո–ց, ևլն: Ս–ո–վ–ա– հ–ա–ն–գ–ո ղ–ա–մ–ե–նա–յ–ն, ևլն: Ը–ն–դ ո–ր–ո ե– մ–ե–ղ, ևլն:

Սրբոցն յիշատակ առընթեր սեղանոյն ի լսուր ժողովրդեանն:[34] ...Քահ. Ա–ս–տ–ո–ւ–ա–ծ–ա–ծ–ն–ի ո–ր–բ–ո–յ կ–ո–ւ–ս–ի–ն, ևլն: — Սարկաւագն գայ յաջակողմն սեղանոյն խնդարկելով շուրջ զսեղանովն. ուղղէ զդէմս ի պատարագն, ասէ բարձր ձայնիւ ի լսուր ժողովրդեանն. Ա–ռ–ա–ք–ե–լ–ո–ց ո–ր–բ–ո–ց, մ–ա–ր–գ–ա–ր–է–ի–ց, ևլն: Ա–ռ–ա–ջ–ն–ո–ր–դ–ա–ց–ն մ–ե–ր–ո–ց, ևլն: Մ–ի–ա–ն–ձ–ն–ա–ց–ե–լ–ո–ց, ևլն: Թ–ա–գ–ա–ւ–ո–ր–ա–ց հ–ա–ւ–ա–տ–ա–ց–ե–լ–ո–ց, ևլն: ...Քահանայն կրկնաբանէ զաղօթսն նոցուն ասելով.[35] Ցի–շ–ե– Տէր ե– ո–ղ–ո–ր–մ–ե–ա: Իսկ սարկաւագն ի սկսանել քահանային զաղօթսն խորհրդաբար, գայ դարձեալ ի նոյն յառաջին տեղին իւր յաջակողմն քահանային և սկսանի ասելով.[36] Ե–ե–ո գ–ո–հ–ո–ւ–թ–ի–ւ–ն ե– ջ–ա–ռ–ա–բ–ա–ն–ո–ւ–թ–ի–ւ–ն մ–ա–տ–ո–ւ–ց–ո–ւ–ք, ևլն: Ա–շ–ա–տ–ո–ւ–թ–ի–ւ–ն ե–ղ–բ–ա–ր–ց մ–ե–ր–ո–ց, ևլն: (Ժող.) Ը–ս–տ ա–մ–ե–նա–յ–ն–ի ե– յ–ա–ղ–ա–գ–ս ա–մ–ե–ն–ե–ց–ո–ւ–ն:

Քահանայն ասէ զաղօթսն.[37] Ցի–շ–ե– Տէր ե– ո–ղ–ո–ր–մ–ե– ե– օ–ր–հ–ն–ե– զ–ս–ո–ւ–ր–բ կ–ա–թ–ո–ղ–ի–կ–է, ևլն: Ցի–շ–ե– Տէր ե– ո–ղ–ո–ր–մ–ե– ե– օ–ր–հ–ն–ե– զ–ա–մ–ե–նա–յ–ն ո–ւ–ղ–ղ–ա–փ–ա–ռ ե–պ–ի–ս–կ–ո–պ–ո–ս–ո–ւ–ն–ս, ևլն: Ցի–շ–ե– Տէր ե– ո–ղ–ո–ր–մ–ե– զ–ե–ո ա–ռ–ա–ջ–ի կ–ա–ց–ե–ա–լ ժ–ո–ղ–ո–վ–ո–ւ–ր–դ–ս, ևլն: Ցի–շ–ե– Տէր ե– ո–ղ–ո–ր–մ–ե– ե– օ–ր–հ–ն–ե– զ–ո–ւ–խ–տ–ա–ւ–ո–ր–ս, ևլն: Ցի–շ–ե– Տէր ե– ո–ղ–ո–ր–մ–ե– ե– գ–թ–ա ի հ–ո–գ–ի–ս հ–ա–ն–գ–ո–ւ–ց–ե–լ–ո–ց–ն, ևլն: Եւ աստ թէ կամիս զոք յանուանէ յիշել՝ բարւոք է, յիշեա: Ցի–շ–ե– Տէր ե– զ–ա–յ–ն–ո–ւ–ի–կ ո–ր– յ–ա–ն–ձ–ն ա–ր–ա–ր–ի–ն մ–ե–ղ, ևլն: Ե– ե–ղ–ի–ց–ի ո–ղ–ո–ր–մ–ո–ւ–թ–ի–ւ–ն մ–ե–ծ–ի–ն Ա–ս–տ–ո–ւ–ծ–ո–յ, ևլն: Ժող. Ե– հ–ո–գ–ւո–յ–դ ք–ո–ւ–մ:

Քհ. ասէ զաղօթսն՝ Ա–ս–տ–ո–ւ–ա–ծ ճ–շ–մ–ա–ր–տ–ո–ւ–թ–ե–ա–ն: Սարկաւագն քարոզէ. Ե– ե–ո–ս, ևլն: Ա–մ–ե–նա–յ–ն ո–ր–բ–ո–ք, զ–ո–ր–ո յ–ի–շ–ա–տ–ա–կ–ե–ց–ա–ք, ևլն: Վ–ա–ս–ն մ–ա–տ–ո–ւ–ց–ե–ա–լ, ևլն: Ո–ր–դ–ե–ո վ–ի Տէր, ևլն: Ե– փ–ո–խ–ա–ն–ա–կ ա–ս– մ–ե–ղ ա–ս–ա–ս–ց–ե–ս, ևլն: Ը–ն–կ–ա–լ կ–ե–ց–ո, ևլն: Զ–ա–մ–ե–ն–ա–ս–ո–ւ–ր–բ–ո–ւ–հ–ի, ևլն, ևլն:

Խորհրդական աղօթք զոր մատուցանէ քհն.[38] Ա–ս–տ–ո–ւ–ա–ծ ճ–շ–մ–ա–ր–տ–ո–ւ–թ–ե–ա–ն ե– հ–ա–յ–ր ո–

---

դրած էր իւր խորհրդատետրին մէջ այսպիսի խրատագիր մը. (տես նոյնը վարը:)

27 A³ չունի հոս "զԴրունս„ ևլն. նաև հոս մեկնութիւնն ալ շատ տարբեր է $A^{1-2}$ բնագրաց մէջ եղածէն: Ցետոյ կը կցէ "Սարկաւագն ասէ. Ահե–„ ևլն:

28 Այսպէս $A^{1-2}$. իսկ A³ լաւ ևս "դառնայ առ ժողովուրդն„ ևլն:

29 Հոս ունի A³ "Սարկաւագն. Զ–դ–ր–ո–ւ–ն–ս զ–դ–ր–ո–ւ–ն–ս ա–մ–ե–նա–յ–ն ի–մ–ա–ս–տ–ո–ւ–թ–ե–ա–մ–բ և զգուշութեամբ:... Սարկ. ի վեր ընծայեցուցեք„ ևլն:

30 A³ "Քահանայն բազկատարած ասէ. Ս–ո–ւ–ր–բ„ ևլն:

31 Միայն A³ ունի հոս խրատագիրս՝ "Եւ առնու զընծայսն ի ձեռն, և ասէ. Ե– ա–ր–դ մ–ե– Տէր„ ևլն:

32 A³ միայն "Քահանայն բազկատարած ասէ. Զ–ե–ղ ա–ր–դ–ա–ր–ե–„ ևլն:

33 Հոս ալ A³ կը յաւելու. "Եւ քհ. խաչակնքէ զընծայսն և ասէ. Որ–ո–վ շ–հ–ա–ց–ո„ ևլն:

34 $A^{1-3}$ այսպէս է բուն՝ "Եւ զի՞նչ յայտ առնէ այժմ ($A^3$ յիշելն) զսրբոցն զյիշատակ առընթեր սեղանոյն ի լսուր ժողովրդեանն:„

35 A³ չունի հոս խրատագիրս "Եւ քհ. կրկնաբանեալ„ ևլն. այլ քիչ մ՚եաքը. (Տես. 37:)

36 $A^{1-3}$ "սկսանի ասել.„ որ աւելի յարմար է:

37 Նաև աեղ ունի A³ "Եւ քհ. կրկնաբանէ զբանս նոցին ասելով. Ցի–շ–ե– Տէր ե– ո–ղ–ո–ր–մ–ե– ե– օ–ր–հ–ն–ե–„ ևլն: Եպիսկոպոսաց և եպիսկոպոսապետին համար աղօթելէն ետքը կը դնէ սարկաւագին ("Գոհութիւն և փառաբանութիւն„ ևլն) քարոզութիւնն և յիշատակաց մնացեալ մասը:

38 $A^{1-2}$ այսպէս ունի հոս՝ "Մեկնութիւն խորհրդական աղօթիցն, զոր մատուցանէ քահանայն:„ A³ յաւել խրատագիր ունի՝ "Եւ ան–

Զ–ե–ղ ա–ր–դ–ա–ր–ե–„ ևլն:

ղորմութեան, ասէ։ Եւ փառք մեզ հանապազօրեայն, ասէ։

Եւ ժողովուրդն տարածեալ զձեռս երկեն բարձր, եւ քհն. ի ծածուկ ասէ զաղաւթս.[39] Հայր մեր որ յերկինս, ասէ։ Եւ զաւարտումն աղօթիցս ի քհն. յանձն առնեն,[40] զի նա է հայր սոցա. որպէս եւ ասէ՝ Տէր փրկութեան, Աստուած ամենակալ... ազգեցոյ է թագաւորութիւն, քո է արքայութիւն եւ զօրութիւն եւ փառք յաւիտեանս։ Ժող. Ամէն։ Քհ. Խաղաղութիւն։ Ժող. Եւ ընդ հոգւոյդ քում։ Սրկ. Աստուծոյ երկրպագեսցուք։

Եւ քահանայն խոնարհեցուցեալ զգլուխն իւր նման ժողովրդեանն, աղօթէ առ Հոգին սուրբ...։ Որ աղբիւրդ ես կենաց, ասէ։

[Քհ.] Քրիստոսի Յիսուսի, ասէ։ Սրկ. բարձր բարբառով ասէ.[41] Պռօսխումէ։ Քհն. վերացուցանէ զընծայն ի վեր քան զգլուխն բարձր.[42] ի սրբութիւն սրբոց։ Ժողովուրդն միաձայն աղաղակեն. Միայն սուրբ, միայն Տէր, ասէ։

Քհն. ունել(ով) զնոյն յերկուսին ի ձեռն.[43] Աւրհնեալ Հայր սուրբ, ասէ։ Ժող. Ամէն։ — Աւրհնեալ Որդին...։ Աւրհնեալ Հոգին...։ Աւրհնութիւն եւ փառք Հօր, ասէ։ Եւ դպիրքն[44] զնոյն երկրորդեն զքահանայիւն։

Քահանայն դարձեալ խոնարհի եւ աղաւթէ. Նայեաց Տէր մեր, ասէ։ Եւ զայս աւարտեալ երկրպագէ եւ համբուրէ զսեղանն. եւ առեալ զսուրբ մարմինն ողջ թանայ յանապական[45] արիւնն. եւ բարձրացուցանէ

աչներբեւ ժողովրդեանն. եւ ասէ. Ի սուրբ սուրբ մարմնոյ եւ յարենէ, ասէ։

Սրկ. Սաղմոս ասասցէք Տեառն Աստուծոյ մերոյ, ասէ։ Եւ սկսանի եկեղեցին եղանակել՝ Քրիստոս պատարագեալ։ Իսկ քահանայն՝ մինչ նոքա երգեն՝ առնու զմարմինն ի ձեռն եւ համբուրէ արտասուօք ասելով.[46] Խոստովանիմ եւ հաւատամ թէ դու ես որդի Աստուծոյ, որ բարձեր զմեղս աշխարհի։ Եւ բեկեալ արկանէ ի բաժակն ասելով. Լրումն Հոգւոյն սրբոյ։ Եւ ապա խնդրէ ի Տեառնէ զպէսպէս հայցուածս անձին եւ ժողովրդեան եւ ամենայն աշխարհի, որչափ կամի.[47] յետ այնր առեալ ճաշակէ ասելով՝ Մարմին քո անապական եղիցի մեզ ի կեանս եւ արիւն քո՛ ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ Եւ մինչդեռ նա ասէ եւ դպիրքն պաշտեն, հրաման տայ ճաշակել որք ի քահանայից կարգէ են։

Իսկ սարկաւագն առնու զսկիհն սուրբ նուիրօքն, դառնայ ի ժողովուրդն ասելով. Երկիւղիւ եւ հաւատով, յառաջ մատիք։ Քահանայն զայ զկնի սարկաւագին եւ կնքէ զժողովուրդն ասելով. Կեցո Տէր զժողովուրդս քո, ասէ։ Ժողովուրդն համբարձեալ զձեռս միաբան ասեն. Աստուած մեր եւ Տէր մեր երեւեցաւ մեզ, ասէ։ [48]Եւ հաղորդեցուցանէ քհն. զարժանաւորսն.

Եւ դպիրքն պաշտեն.[49] Քրիստոս պատարագեալ բաշխի ի մէջ մերում, ասէ։ Լոյս ծնմարիտ եւ ծառայութիւն։ Եւ որչափ յամէ քհ. ի ճաշակումն՝ դպիրքն յերկարեն զերգսն...։ (Ի

---

դէն ընդ քարոզութեանն՝ քահանայն խորհրդաբար աղօթէ։»

[39] Այսպէս A[1–2], միայն A[2] «ասէ զաղաւթս» բառերը չունի։ A[3] միայն այսչափ՝ «Եւ դպիրքն բազկատարած եղանակեն։»

[40] A[2–3] «ի քհ. յանձնեն» ասէ։

[41] A[3] «Եւ քահանայն առնու զսուրբ հացն ի ձեռն։ Եւ սարկաւագն ձայնէ բարձր. Պռօսխումէ։»

[42] «Բարձր» բառն չունի հոս A[3], այլ ասոր տեղ՝ «եւ ասէ։»

[43] Ճիշդ այսպէս («ունել» եւ «ի ձեռն») A[1–2]. իսկ A[3] «քահանայն ունելով զնոյն յերկոսին ձեռսն, ասէ» ասէ։

[44] Հոս A[3] «եւ ժողովուրդքն» (փխ. «դպիրքն։»)

[45] Միայն A[1] ունի ուղիղ ընթերցուածը «յանապական արիւնն.» A[2–3] անճահ՝ «յանապակ արիւնն։» — Ասկէ զատ յաջորդ տողին մէջ «եւ բարձրացուցանէ աչներբեւ ժողովրդեանն» խօսքէն յառաջ ունի A[3] «...արիւնն. եւ ասէ

զաղօթս զայս. Տէր Աստուած մեր, որ կոչեցեր զմեզ յանուն Միածնի Որդւոյ քոյ քրիստոնեայս» ասէ։ Այս աղօթքն ըլլալու է արդեամբք ալ այս տեղ, մինչդեռ A[1–2] չունին թէ աղօթքս եւ թէ ասոր կից Մեկնութիւնը։

[46] Հոս ալ A[3] կը յաւելու՝ «...համբուրէ արտասուօք եւ ասէ. Զո՞ր օրհնութիւն կամ զո՞ր գոհութիւն է վերայ հացիս եւ բաժակիս ասէ։ Դարձեալ ասէ. Խոստովանիմ» ասէ։

[47] A[3] յաւելու «որչափ եւ կամի։ Եւ յետ այնորիկ առեալ ճաշակէ» ասէ։

[48] A[1–2] ճիշդ այսպէս ունի Ճաշակման մասերուս կարգը։ A[3] մեր այժմու պատարագին համեմատ նախ կը դնէ ժողովրդեան «Աստուած մեր եւ Տէր մեր» ասելն ըսելն, յետոյ՝ քահանային «Կեցո Տէր» ասէ։

[49] A[3] «Եւ դպիրքն երգեն զերգս։ Եւ որչափ յամէ» ասէ։ Յետոյ՝ «Եւ դպիրքն երգեն. Լցաք» ասէ։

ճաշակումն։) Լոյս է խորհրդեանց քոց Տէր, եւն։

Լուանայ քահանայն զձեռն։ Սրկն., մինչ նորա պաշտեն,[50] խունկ արկանէ շուրջ զսեղանովն. եւ առեալ զսպասն տանի ի սարկաւագարանն։ Եւ քարոզէ Սրկն. Եւ եւս խաղաղութեան ընկալեալք յաստուածայինն, եւն։

Եւ քահանայն ընդ նմին ասէ.[51] Գոհանամք զքեն Տէր, որ զայսպիսի ճաշակումն խորհրդեան շնորհեցեր, եւն։ Խաղաղութ. ընդ ամ.։ Աստուածոյ երկրպագեսցուք։ — Անքննին, անհաս, եւն։

Եւ եթէ եպիսկոպոս լինի[52] պատարագիչն, ի սոյն ժամուն զգենու զեմիփորոնն, եւ գայ ի մէջ եկեղեցւոյն... զոր եւ ասէ իսկ. Որ օրհնես զայնոսիկ՝ որ օրհնեն զքեզ, եւն։

Ժողովուրդն ասեն. Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմ հետէ մինչեւ յաւ.։ Գ. կրկնէ։ — Քհ. ասէ[53] ի վերայ նոցա. Կատարումն օրինաց եւ մարգարէից, ...լցո եւ զմեզ Հոգւոյդ քով սրբով։

Եւ բերեն նշխար առ քահանայն։ Եւ նա օրհնեալ բաշխէ ժողովրդեանն։ Եւ ասեն սղմ. Աւրհնեցից զՏէր յամենայն ժամ. ի բուն զփոխն։[54]

---

[50] A³ հաս այլ՝ "Եւ սարկաւագն, մինչ նոքա երգեն, խունկ... տանի ի սարկաւագարանն։ Եւ եկեալ հրամայէ ժողովրդեանն գոհանալ այսպէս. Եւ եւս խաղաղ.. Եւ եւս խաղաղութ. ընկալեալք," եւն։

[51] A³ ասոր տեղ պարզապէս՝ "Աղօթք։"

[52] A²⁻³ լաւ եւս "եթէ եպ. իցէ" եւն։

[53] A³ "Քհ. դառնայ եւ ասէ" եւն։

[54] A² "... ի բուն զփոխն, միա լաւ դիր"։ A³ "... Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, եւ այլն։ Եւ քահանայն խաչակնքելով զժողովուրդն ասէ՝ Օրհնեալ Եղբարք, եւ այլն։ Եւ ապա՝ ի Տէր դարձուցէ. զփոխն լման ասելով։" — Այս վերջին մասերուս մեկնութեամբ կ'աւարտի Արճիշեցւոյ Պատարագամատոյցին այլ։

## Բ.

## ԲՆԱԳԻՐ ԼԱՄԲՐՈՆԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԻ

*ԱՒՐՀՆՔ ԱՐԿԱՆԵԼՈՑ ՍՊԱՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ*

Ը. — *Յորժամ կամեսցի քահանայն պատարագ մատուցանել, պարտ է այսպէս խորհրդաբար զգեստաւորել: Հանդերձ սարկաւագաւքն մտանէ յաւանդատուն ուր զգեստն է պատարագին. եւ զգեցեալ պաշտաւնէիցն ըստ իւրաքանչիւր աստիճանի, ասեն ապա սաղմոս, Յիշեա Տէր զԴաւիթ տուն առ տուն ամենեքեան: — Քարոզէ սարկաւագն. Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչ։ — Ժողովեալքն ասեն. Տէր ողորմեա։ — Սարկաւագն. Խնդրեսցուք հաւատով եւ միաբանութեամբ ի տեառնէ, զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր. ամենակալ տէր Աստուած մեր, կեցո եւ*

---

*Ցաջորդ հրատարակութեանս հիմն է N կամ Լամբրոնացւոյ մատենագրութեանց մէջ տպագրուածը։ Համեմատուած են բաց ի Մխիթարէնի ձեռագրի պատարագէն (MA), նաեւ նորին Լամբրոնացւոյ իւր մեկնութեան մէջ հիւսած ընթերցուածներն (N²), որոնք երբեմն նշանաւոր շեղում կը ցուցնեն իւր Պատարագամատոյցէն, ինչպէս նաեւ իւր հետեւողին՝ Յովհ. Արճիշեցւոյ՝ պատարագի մեկնութեան մէջ հիւսուածները (A)։ Ուղղագրութեան մասին հետեւած ենք ճշդիւ N ի, միայն -օ ուղղագրութիւնը փոխած ենք ամէն տեղ -ու՝ հետեւելով MA ի։ Ա—ԻԴ հատուածոց բաժանմունք մեզմէ են. իսկ հատուածոց խորագրեր աւելորդ համարեցանք հոս դնել, նոյները կրնան տեսնուիլ Աթանասի (էջ 272—99) եւ Ռոկեբերանի (էջ 353—84) պատարագաց մէջ, ուր յաճախ համեմատուած են Լամբրոնեան N եւ MA օրինակները։ Այս համեմատութիւնքն, ուստի Աթանասի եւ Ռոկեբերանի տարբերութիւնքն հոս ի հարկէ չենք կրկներ. նաեւ ուր MA ի ընթերցմունք դրած ենք այն տեղերն՝ հոս միայն յիշեալ էջերը կը նշանակենք, նոյն համեմատութեանց ծաւալը կրկնութեամբ չընդարձակելու համար։ MA ի համառօտութիւններն մի առ մի չենք նշանակած։* ՀՐՏՐ.

Ա. ‖[1] MA “*Աւրհնք արկանելոյ սպաս եկեղեցւոյ։ Յորժամ կամեսցի պատարագ մատուցանել։ Պարտ է քահանային այսպէս խորհրդաբար զգեստաւորիլ։ Հանդերձ սարկաւագաւքն մտանէ յաւանդատունն, ուր զգեստքն են պատարագի*„ *եւն։* ‖[5] “*Յիշեա Տէր զԴաւիթ*„ *սաղմոսը լիակատար եւ մեկնութեամբ պարզաբանուած տես ի* N² (*էջ* 237—44)։ ‖[6—7] N *եւ* N² *եւ* A “*Սարկաւագն*.„ MA “*Եւ քարոզէ նախասարկաւագն... ժողովուրդն՝ Տէր ողորմեա*։„ ‖[8—9] MA “*զի զողորմութեան զշնորհսն արասցէ ի վերայ մեր, Ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ եւ ողորմեսցէ*։„ *Առոր համեմատ է* N² “...*զշնորհսն արասցէ ի վերայ մեր՝ Տէրն ամենակալ, կեցուսցէ եւ ողորմեսցի*.„ (*բայց քանի մը տող վերջը՝* “*Ամենակալ Տէր*„ *եւն* N *ի պէս*։) *Երկուքին մերձաւոր է* A, *որ այսպէս կը համառօտէ այս եւ յաջորդքն՝* “*Քարոզէ Սարկաւագն. Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ ի Տեառնէ, կեցուսցէ եւ ողորմեսցի։ Ժողովուրդն. Կեցո Տէր։ Սրկն. Ողորմեաց մեզ. ասասցուք մի.։ Ժողով. Գ. Տէր ողորմեա։ Քհ. Զհաճոյսն աղօթից նոցա եւ ընթանեբար խօսի ընդ Քրիստոսի ասելով. Որ զգեցեալ ես*

*ողորմեա։ — Ժողով. Կեցո Տէր։ — Սրկ. Ողորմեաց մեզ տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ, տէր ողորմեա։ — Ժողով. Տէր ողորմեա, ԺԲ:*

*Քահանայն խոնարհի եւ ասէ զաղաւթս զայս.* Որ զգեցեալ ես զլոյս որպէս հանդերձ տէր մեր Յիսուս Քրիստոս, անճառելի խոնարհութեամբ ի յերկրի երեւեցար, եւ ընդ մարդկան շրջեցար. որ եղեր քահանայապետ ճշմարիտ ըստ կարգին Մելքիսեդեկի, եւ զարդարեցեր զեկեղեցի քո սուրբ. տէր որ պարգեւեցեր եւ մեզ զնոյն զերկնային հանդերձն զգենուլ. արժանի արա եւ զիս ի ժամուս յայսմիկ զանպիտան ծառայս քո որ համարձակիմ եւ մերձենամ ի նոյն հոգեւոր պաշտաւն փառաց քոց, որպէս զի զամենայն ամբարշտութիւնս մերկացայց, որ է հանդերձ պղծութեան, եւ զարդարեցայց լուսով քո։ Ընկեա յինէն զչարիս իմ, եւ թաւթափեա զյանցանս իմ, որպէս զի արժանի եղէց հանդերձեալ լուսոյդ առ ի քէն. շնորհեա ինձ քահանայական փառաւք մտանել ի պաշտաւն սրբութեանց քոց ընդ այնոսիկ որք անմեղութեամբ պահեցին զպատուիրանս քո. զի եւ ես պատրաստ գտայց երկնաւոր առագաստին ընդ իմաստուն կուսանսն փառաւորել զքեզ Քրիստոս որ բարձեր զմեղս ամենեցուն։ Դու ես սրբութիւն անձանց մերոց եւ քեզ բարերարիդ Աստուծոյ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։

*Եւ մատուցեալ կիսասարկաւագքն զգեցուցանէ նմա զհանդերձն սաղմոսելով.* Դատ արա ինձ տէր, զի ես յանբծութեան։ — *Եւ ի զգենուլն զհանդերձն ասէ.* Զգեցո ինձ տէր զհանդերձ փրկութեան եւ պատմուճան

---

զլոյս„ եւն։ ‖[12] MA "Ժողովուրդն պատասխանէ Տէր ողորմեա։„ Ասկէ ետքը կը կցէ MA "Դնէ զխոյրն ի գլուխն ասելով. Դիր Տէր գլխոյ իմոյ սաղաւարտ փրկութեան, զնշան խաչի քո, պատերազմել ընդ զօրութիւն թշնամոյն, շնորհաւք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառ։ Ի զգենուլ շապկին ասասցէ. Զգեցո ինձ Տէր զհանդերձն փրկութեան եւ պատմուճան ուրախութեան, եւ շուրջ պատեսցէ զգեստովս փրկութեան, շնորհաւք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում։ Այլ աղօթք հանդերձին. Որ զգեցեալ ես զլոյս„ եւն։ ‖[13ff.] Աղօթքս տես առ Ռոկեր., վերն էջ 353—54։ ‖[17] MA, ինչպէս նաեւ N[2] եւ A "Տէր ամենակալ, որ պարգեւեցեր եւ մեզ զնոյն զերկնային հանդերձ զգենուլ„ եւն։ ‖[18] AN[2] եւ MA "զանպիտան ծառայս„ եւն։ ‖[24] Նաեւ N[2] "զպատուիրանս քո.„ բայց քիչ մ'ետքը կը գրէ "զբերանս քո։„ ‖[26] A "Զի դու ես սրբութիւն„ եւն։ ‖[25—30] Ասկէ մինչեւ Գրիգորի Նարեկացւոյ աղօթքը ("Ամենակալ Աստուած բարերար„ եւն) չունին A եւ N[2], այսինքն Լամբրոնացի (եւ անոր հետեւող Յովհ. Արճիշեցի) չէ առած մեկնութեան մէջ։ Այսպիսի զանցառութիւնք շատ բազմաթիւ են եւ դիւրաւ մեկնելի. վասն զի բնական է որ մեկնիչին կամքէն կախում ունէր այս կամ այն մասը լուսաբանելու արժանի տեսնել կամ ոչ։ Այսպիսի զանցառութիւնք չենք նշանակեր ամէն անգամ մի առ մի։ — Զգեստաւորման աղօթքներս բաւական տարբեր կարգով եւ այլազգ ունի MA, որ նախընթաց ("Որ զգեցեալ ես զլոյս„) աղօթքին կը կցէ հետեւեալ կարգաւ. "Ածէ զխոյրն եւ ասէ զաղօթս զայս. Շուրջ պատեսցէ կամար հաւատոյ... Դնէ ուրար ի պարանոցն եւ ասէ զաղօթս. Զգեցոյ Տէր պարանոցի իմոյ...

*ուրախութեան, եւ շուրջ պատեա զգեստովս փրկութեան. շնորհաւք Տեառն մերոյ։ — Ու ածէ զաւտի. Շուրջ պատեսցէ կամար հաւատոյ զմէջս սրտի իմոյ եւ զմտաց, եւ շիջուսցէ ի սմանէ զխորհուրդս աղտեղիս, եւ զաւրութիւն շնորհաց քոց յամենայն ժամ բնակեսցէ ի սոսա. շնորհաւք Տեառն մերոյ։ — Ուրարին. Զգեցո Տէր պարանոցի իմոյ զարդարութիւն, եւ սրբեա զսիրտ իմ յամենայն աղտեղութենէ մեղաց. շնորհաւք Տեառն մերոյ։ — Բազպանին. Տուր Տէր զաւրութիւն ձեռին իմոյ, եւ լուա զամենայն աղտեղութիւնս իմ, որպէս զի կարող լինիցիմ սպասաւորել քեզ անաղտեղութեամբ հոգւոյ եւ մարմնոյ. շնորհաւք Տեառն մերոյ։ — Նափորտին. Տէր ողորմութեամբ քո զգեցո ինձ զգեստ պայծառ, եւ պարսպեա ընդդէմ ներգործութեանց չարին. զի արժանի եղէց փառաւորել զքո փառաւորեալ անունդ. շնորհաւք Տեառն մերոյ։ — Ցորժամ զխոյրն դնէ եպիսկոպոսն. Տէր, դիր սաղաւարտ փրկութեան ի գլուխ իմ պատերազմել ընդ զաւրութիւն թշնամւոյն. շնորհաւք Տեառն մերոյ։ — Իսկ եթէ կամի զայս ասասցէ ի զգենուլն զհանդերձն. ածէ զաւտի ընդ մէջն, եւ արկանէ ուրար զուսովքն ասելով. Քահանայք քո զգեցցին զարդարութիւն, եւ սուրբք քո ցնծալով ցնծասցեն։ Դնէ զբազպանն, եւ զգենու զփիլոնն ասելով. Ցնծասցէ անձն իմ ի Տէր, զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան, եւ պատմուճան ուրախութեան. իբրեւ փեսայի եդ ինձ պսակ, եւ որպէս հարսն զարդու զարդարեաց զիս։*

Իսկ եթէ եպիսկոպոս լինի խորհրդածօղն, առեալ զսուրբ կոնքեռն, ածեալ է վերայ լանջացն եւ զաստուածային նշխարսն, եւ գայ առընթեր ընծայարանի սեղանոյն՝ լուացեալ զձեռս, եւ մատուցեալ անկանի առաջի սեղանոյն է վերայ երեսաց երկրոյ լալով եւ անմռունչ, եւ ասէ զաղօթս զայս առ սուրբ Հոգին փոխարէն երգոյն։

*Ամենակալ Աստուած բարերար մարդասէր, Աստուած բոլորից յաւրինող երեւութից եւ աներեւութից, փրկող եւ հաստատող, խնամող խաղաղարար, Հաւր հզաւր Հոգի. հայցեմք բազկատարած մաղթանաւք՝ գոչմամբ հե-*

---

*աղտեղութենէ մեղաց, բառնալ զքաղցր լուծ քոյ պատուիրանաց, շնորհաւք…։* Եւ դնէ զխաչակալն եւ ասէ զաղաւթս զայս. *Տուր Տէր զաւրութիւն ձեռին իմոյ եւ լուայ զամենայն աղտեղութիւն, որպէս զի կարող կարող լինիցիմ սպասաւորել քեզ անախտութեամբ հոգւոյ…։* Եւ ի միւս յերան դնէ խաղողն եւ ասէ զաղաւթս զայս. *Սրբեա Տէր զձեռս իմ ամբառնալ առ քեզ արդարութեամբ եւ մաքրութեամբ, շն.։* Եւ շուրջառն ասէ զաղաւթս զայս. *Տէր ողորմութեամբ քով զգեցոյ ինձ զգեստ պայծառ եւ պարսպեա ընդդէմ ներգործութեան չարին… զքո փառաւոր անունդ, շնորհ.։* Այլ աղաւթք շուրջառին. *Ցնծասցէ անձն իմ ի Տէր… եւ որպէս զհարսն…։* Եւ լուանայ զձեռն եւ ասէ սաղմոս. *Դատ արայ ինձ Տէր զի ես յամբծու.։* Եւ ասէ մինչեւ վերջն։ Եւ ապա ասէ զաղաւթս զայս. *Տէր հալածեա ի մէնջ զխաւարութիւն. որպէս զի կարող լիցուք հոգւով հեզութեան մտանել ի քո սրբութիւնս, շնորհաւք Տեառն մերոյ։* Իսկ եթէ եպիսկոպոս լինի„ եւն։ ‖[51−54] MA "առնու զսուրբ կոնքեռնն, ածէ ի վերայ… գայ առընթեր ընծայարան սեղանոյն, լուանայ զձեռսն, եւ մատուցեալ անկանի առաջի սրբոյ սեղանոյն… Հոգին անուրէնիչ գործոյն." ‖[54] MA աղօթքէս յառաջ կը նշանակէ "Նարեկեցւոյն։" Աղօթքներու սկիզբն նաեւ A եւ N²։ ‖[56] MA "խնա-

*ծութեան յանդիման եղեալք աՀաւորիդ։ Մատչիմք մեծաւ դողութեամբ, սաստիկ երկեղիւ՝ մատուցանել Նախ զքանականս զայս պատարագ քում անքնին տէրութեանդ, իբր աթոռակցի, փառակցի եւ արարչակցի Հայրենի անկապուտ պատուոյդ, եւ քննողի ծածկութեան խորոց խորՀրդոց ամենակատար կամաց Հաւր Էմմանուէլի, եւ կենդանատուի եւ արարչի ամենայնի։ Ի ձեռն քո ծանուցաւ մեզ երրեակ անձնաւորութիւն միասնական աստուածութեանդ, յորոց մի եւ դու ճանաչիս անՀաս. քեւ եւ ի ձեռն քո առաջինքն ՆաՀապետական տոՀմին շառաւեղք տեսանողք անուանակոչեալք, զանցեալսն եւ զգալոցսն, զեղեալսն եւ զոչ գոյացեալսն անստուերաբար բանիւ վերապատմեցին։ Հոգի Աստուծոյ քարոզեալ գքեզ Մովսեսի՝ որ ի գնալն քո ի վերայ ջրոցն անպարագիր զաւրութիւն, աՀեղ շրջարկութեամբ թեւապարփակ տածողականաւ պաշտպանողաւրէն գթասիրեալ ի ծնունդս Նորոգս, զաւազանին խորՀուրդ ծանուցեր. յոր կերպարան աւրինակութեան Նախ քան զկառուցանել զլոյծ մանուած վերջնում վարագուրիդ յաւրինեցեր կարող տիրապէս զքովանդակ բնութիւնս ամենից բնաւից գոյից բոլորից ամենայն էից յանէից։ Քեւ ստեղծանին ի Նորոգութիւն յարութեան ամենայն եղեալքս առ ի քէն, յայնմ ժամանակի՝ որ աւր վերջին է այսմ կենցաղի, եւ աւր առաջին երկրին կենդանեաց. քեզ ՀՆազանդեցաւ միութեամբ կամացն որպէս Հաւր իւրում ազգակիցն քո՝ էակիցն Հաւր անդրանիկն Որդի մերով կերպիւ, զքեզ աւետարանեաց ճշմարիտ Աստուած Հաւասար եւ Համագոյ Հաւրն իւր Հզաւրի. զառ ի քեզ ՀայՀոյութիւնն անքաւելի քարոզեաց, եւ իբր զաստուածամարտից զ'ի քէն Հեստելոցն չարաբանական բերանսն կարկեաց, եւ զիւրն շնորՀեաց արդարն եւ անարատն՝ գտիչ ամենայնի, որ վասն մեղաց մերոց մատնեցաւ, եւ յարեաւ վասն զմեզ արդարացուցանելոյ. Նմա փառք ի ձեռն քո, եւ քեզ բարեբանութիւն ընդ Հաւր ամենակալի յաւիտենից յաւիտեանս, ամէն։*

---

մաւղ (A խնամօղ, N[2] խնամող) է– խաղաղարար„ եւն։ ‖58 AN[2] եւ MA "յանդիման եղեալ։„ ‖59 Նաեւ N[2] "երկեղիւ.„ A եւ MA "երկիւղիւ։„ ‖60 MA եւ AN[2] "անքննին տէրութեանդ։„ ‖61 A եւ N[2] "...պատուոյդ, քննող ծածկութեան խորոց ամենակատար„ եւն։ ‖62 MA եւ AN[2] "...Էմմանուէլի (A Եմմանուէլի, N[2] Էմմանուէլի), ... եւ կենդանատուի„ եւն։ ‖65 MA եւ A "շառաւիղք։„ ‖66 N[2] "զանցեալ.„ A "զյանցեալսն.„ MA "զանցեալսն եւ զգալոցն„ եւն։ ‖67 MA եւ A "...անստուերաբար բարբառով բան ի վերայ պատմեցին.„ N[2] "բարբառով բանի վերապատմեցին։„ — A "Հոգի Աստուծոյ քարոզել զքեզ„ եւն։ ‖68 MA եւ A "ի վերայ ջրոյն„ եւն։ ‖69 MA եւ AN[2] "շրջարկութեամբ տածողականաւ թեւապարփակ„ եւն։ ‖71 MA եւ N[2] "զլոյծ մանուած.„ բայց N[2] ի մէկ օրինակն ունի "մանուած,„ նոյնպէս A. — MA "վերջնումն„ եւն. A "վերջնումդ„ եւն։ ‖72 N[2] "զքովանդակ բնութիւն„ եւն։ ‖73 A "...բոլորից ամենից յանէից,„ եւ յետոյ "ի նորոգութիւն յարութեանն„ եւն։ ‖74 MA եւ AN[2] "որ է աւր վերջին„ եւն։ ‖76 MA "որպէս Հաւրն իւրում„ եւն։ — A "ազգակիցն քո Ի– էակիցն„ եւն։ ‖77 MA եւ AN[2] "մերովս կերպիւ։„ ‖78 N[2] եւ A "Հօրն ...ոյ Հզօրի„ եւն։ — A "ՀայՀոյութիւն ...զառ ի քէն Հեստելոցն„ եւն։ ‖80 MA եւ AN[2] "գտիչն ամենայնի„ եւն։ ‖81–83 A "...վասն մեղաց մեր մատնեցաւ ...վասն զմեզ արդարացուցանել ...ընդ Հօր ամենակալի, Հոգւով զՈրդի եւ Որդւով զՀոգին փառաւորեմք։„ ‖84 A "կրկնեսցի նոյն կարգ բանի մինչեւ„ եւն։ — MA "ի նոյն կարգ բանի ... ...„ եւն (N[2] եւ A "վերաՀայեցութիւն.„

Դարձեալ կրկնեսցէ ի նոյն կարգ բանն՝ մինչև ի վերայ հասցեալ լուսոյն հրաշալեօ ողջունեալ յայտնեսցէ, աւետարանել վերոյին զկրկին խաղաղութեան։

*Աղաչեմք եւ աղերսեմք արտասուալից հառաչմամբ յամենայն անձնէ՝ զփառաւորելի արարչութիւնն անեղծ եւ անստեղծ անժամանակ Հոգւոյդ գթածի, որ բարեխաւսդ ես վասն մեր յանմռունչ հեծութիւնս առ ողորմածդ Հայր, որ զսուրբսն պահես, եւ զմեղուցեալսն քաւես՝ մաքրես եւ տաճարս կազմես կենդանիս կեցուցիչ կամաց բարձրեալդ Հաւր։ Արդ աղաւեա զմեզ յամենայն անմաքուր գործոց՝ որ ոչ է հաճոյ քումդ բնակութեան, եւ մի շիջցին առ ի մէնջ լուսոյդ շնորհաց փայլմունք ի տեսականացս աչաց իմաստից. վասն զի զքեզ ուսաք միանալ ի մեզ ի ձեռն աղօթից, եւ ընտիր վարուց խնկելոց։ Եւ քանզի մինդ յԵրրորդութենէդ պատարագի, եւ միւսդ ընդունի հաճեալ ընդ մեզ հաշտարար արեամբ անդրանկի իւրոյ, իսկ դու ընկալցիս զմեր պաղատանս, եւ յարդարեսցես զմեզ ուխտեւանս պատուականս ամենայն պատրաստութեամբ ի վայելումն ճաշակման երկնաւոր գառինդ՝ առանց պատժոց դատապարտութեան ընդունել զայս անմահացուցիչ մանանայս կենաց նորոյ փրկութեան։ Եւ հալեսցի ի հրոյս յայսմանէ գայթակղութիւնս մեր, որպէս մարգարէին կենդանախարոյկ կայծակամբն ի ձեռն ունելեացն մատուցմամբ, զի յայսմ ամենայնի քոյդ քարոզեսցի գթութիւն՝ ըստ որում Որդւովդ Աստուծոյ Հաւրդ քաղցրութիւն, որ զանառակ որդին մերձեցոյց ի հայրենի ժառանգութիւնն, եւ զպոռնիկն յառաջեցոյց յերկնային արքայութիւնն արդարոցն երանութեան։ Այո այո, եւ ես մի եմ ի նոցանէ. եւ զիս ընկալ ընդ նոսին իբր մարդասիրութեան կարաւտեալ մեծի, շնորհաւք քո ապրեալ, զի յայսմ ամենայնի՝ յամենայնի ծանիցի մարդասիրութիւն քո ընդ Հաւր փառաւորեալ համապատուաբար ի մի կամս, եւ ի մի իշխանութիւն գովութեամբ. զի քո է գթութիւն եւ կարողութիւն, զաւրութիւն եւ փառք յաւիտեանս յաւիտենից։*

Բ. — *Ապա յարուցեալ զայ առընթեր ընծայարան սեղանոյն. առ որ մատուցեալ նախասարկաւագն զնշխարն որ է հաց, դնէ ի մաղզմայն ասելով.*

---

մի օր. ի N² "վերահայեցողութիւն)։ ‖[85] A չունի "զկրկին խաղաղութիւն։" ‖[88] MA "զփառաւորելի արարչութիւն." AN² "զփառաւորելի արարչութիւնդ։ ‖[88] A "որ բարեխօս ես" ևն։ ‖[91] AN² "քումդ բնականութեան։" ‖[92] A "ի տեսական աչացս իմաստից" ևն։ ‖[94] MA "...վարուց խնկելոյ." A "...խընդելոց։" ‖[95] A "անդրանկին իւրոյ" ևն։ ‖[96] AN² "իսկ եւ դու որպէս չկամեցաւ ընկալցիս զմեր պաղատանս" ևն։ ‖[97] MA "ուխտեվանս" ևն. A "օթեւանս պատուական" ևն։ ‖[98] MA "երկնաւորդ գառին." N² "երկնաւորդ գառինն." A "երկնաւոր գառինն։ ‖[101] MA "ի ձեռն ունելեաց" ևն։ ‖[102] A "որդւոյ Աստուծոյ" (փխ. "Որդւովդ")։ ‖[104] MA եւ AN "զպոռնիկն։" — AN² յերկնից արքայութիւնն." (փխ. "յերկնային։") — A "երանութեանն։ Այոյ, այոյ. զի եւ ես" ևն։ ‖[106] Վերը դրուած N բնագիրը թերի է հոս. MA եւ AN² ունին "շնորհաւք քո ապրեալ, զարեամբ (A զարեամբդ) Քրիստոսիդ (AN² Քրիստոսի) սրբեցեալս. զի յայսմ ամենայնի՝ յամենայնի" ևն։ A ունի վերջինս՝ "զի յայսմ ամենայնի ծանիցի քո մարդասիրութիւնդ" ևն։ ‖[109–10] MA եւ A "...կարողութիւն, եւ (MA չունի) մարդասիրութիւն, զօրութիւն" ևն։ — MA "...յաւիտենից. ամէն։"

Յիշատակ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: — Ու առեալ զհնի արկանէ խաչանիշ ի բաժակն որ է սկիհն, ասելով. Յաղագս յիշատակի տնօրէնութեան տեառն Աստուծոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի: — Ու քահանայն ասէ զաղօթս զայս, սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի. Աստուած Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ՝ զտէր մեր Յիսուս Քրիստոս զկերակուր ամենայն աշխարհի առաքեցեր փրկիչ եւ կեցուցիչ, բարերար եւ մարդասէր, աւրհնել զմեզ. ինքնին դու աւրհնեա եւ զառաջադրութիւնս զայս. յիշեա որպէս բարերար զմատուցողս եւ վասն որոյ մատուցանի, եւ զմեզ անդատապարտ պահեա ի քահանայագործութիւն աստուածային խորհրդոց քոց: Զի սուրբ եւ փառաւորեալ է ամենապատիւ մեծվայելչութիւն փառացդ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս: — Դպիրն. Ամէն: — Ու ապա սարկաւագն ծածկէ ասելով. Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ:

---

Բ. Հատածս սկսելէն յառաջ MA երկար մաս մ'ունի, զոր չունի N, այսինքն Հռոմայեցւոց պատարագէն առնուած եւ այժմու սովորականին ալ անցած Մտից (introitus) կարգը, որ է այսպէս. "[illegible] Խոստովանիմ առաջի Աստուծոյ եւ ամենայն երկնային զաւրացն եւ սրբոյ Աստուածածնին եւ սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի, Թադէոսի, Բարթողիմէոսի եւ Գրիգորի Լուսաւորչին, եւ առաջի ձեր հարք եւ եղբարք, զամենայն մեղս՝ զոր գործեալ եմ. քանզի մեղայ խորհրդով, բանիւ, գործով, ամենայն մեղաւք, մեղայ մեղայ մեղայ, աղաչեմ զձեզ խնդրեցէք յԱստուծոյ վասն իմ զթողութիւն: [illegible] Ողորմեսցի քեզ Աստուած հզաւրն եւ թողութիւն շնորհեսցէ ամենայն յանցանաց ձերոց, անցելոյն եւ այժմուս եւ յառաջիկայէն փրկեսցէ եւ հաստատեսցէ յամենայն բարիս եւ հանգուսցէ ի հանդերձեալ կեանսն. ամէն: [illegible] Ազատեսցէ եւ զձեզ Աստուած եւ թողցէ զամենայն յանցանս ձեր, տացէ ժամանակ ապաշխարելոյ եւ գործելոյ զբարիս, եւ ուղղեսցէ զառաջիկայ կեանս ձեր շնորհաւք սուրբ Հոգւոյն, հզաւրն եւ ողորմածն եւ նմա փառք յաւիտեանս. ամէն: [illegible]„ եւն, որ կայ արդէն ի N ալ: ‖114—15 MA "արկանէ խաչանիշ ի սկիհն. Յաղագս յիշատակի փրկագործ տնաւրէնութեան ... եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: [illegible] խաղաղութեան: [illegible] Գ. Տէր ողորմեա: [illegible]„ ‖116—123 Այս աղօթքն եւ MAի տարբեր ընթերցմունքը տես վերն էջ 355—56: Վերը դրուածէն սա շեղումն ունին A եւ N² "... կեցուցիչ եւ բարերար, օրհնել (նոյնպէս MA) ... ինքնին դու Տէր (A չունի) օրհնեա զառաջադրութիւնս ("եւ„ չունի նաեւ MA) զայս. [illegible] (նոյնպէս MA) ... զմատուցողս (N² զմատուցողքս) եւ վասն որոյ (N² մի օր. "վասն որոց„) մատուցանի„ եւն: Վերջաբանութիւնն MA ալ ունի Nի պէս՝ "Զի սուրբ եւ [illegible] (N փառաւորեալ) է„ եւն. իսկ AN² տարբեր՝ "Զի սուրբ ես Տէր Աստուած մեր եւ քեզ վայելէ փառք„ եւն: — "Դպ. Ամէն„ չունի MA: AN² արդէն իսկ պակասաւոր են հոս եւ այլուր, ինչպէս մեկնեցինք: ‖125 MA "Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ. զգեցաւ Տէր զաւրութիւն ընդ: [illegible] Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ եւ զաւրութիւն Բարձրելոյն հովանասցի ի վերայ քո: [illegible]„ եւն:

Գ. — *Եւ տուեալ խունկ ի ձեռս քահանային, ինքն առընթեր կալով ունելով զբուրվառն. եւ նա առեալ մատուցանէ խնկելով եւ ասէ.* **Խունկ մատուցանեմ առաջի քո Քրիստոս բուրումն հոգեւորական: Ընկալ ի սուրբ եւ յերկնային եւ յիմանալի քո մատուցարանդ ի հոտ անուշից, եւ առաքեա առ մեզ փոխարէն զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյդ սրբոյ: Եւ քեզ փառս մատուցանեմք ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյդ սրբոյ. այժմ եւ միշտ:**

*Եւ դնէ խունկ, խաչակնքէ երիցս անգամ երկրպագեալ, եւ ապա արկանէ շուրջ զսեղանովն հպատակաբար: Եւ առընթեր գոլով նմին սարկաւագն խնկակալաւն, եւ կիսասարկաւագն առաջի մոմեղինաւք, իջանէ քահանայն ի մէջ եկեղեցւոյն, եւ խնկէ ամենայն բազմութեան ժողովրդեանն ինքնին: Եւ վերստին դառնայ ի խորանն սուրբ. դարձեալ արկանէ սեղանոյն. եւ տայ զբուրվառն ի սարկաւագն. եւ նա ծխէ նմին, իսկ քահանայն երիցս երկրպագեալ համբուրէ զսեղանն:*

Գ. — *Եւ սարկաւագն հրաման առեալ ելանէ ի մէջ եկեղեցւոյն՝ կանգնի ծեռնամած, եւ ճայնէ ի խորանն առ քահանայն.* **Օրհնեա տէր:** — *Քահանայն.* **Օրհնեալ թագաւորութիւն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւի:** — *Ժողովուրդն.* **Ամէն:** — *Սարկաւագն քարոզէ ժողովրդեանն ասելով բարձր ի թիւ.* **Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչեսցուք:** — *Ժողով.* **Տէր ողորմեա:** — *Սարկաւագն.* **Վասն ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց զտէր աղա: — Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի եւ հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ եւ ամենայն աւր-**

---

Գ. ‖126–27 MA "Եւ Սարկ. տուեալ խունկ ի ձեռս քահանային, ինքն առընթեր ունելով զբուրվառն, եւ նա առեալ մատուցանէ խնկելով զաղօթս զայս" եւն: ‖128 A "խունկ մատուցանեմ+:" — AN² "առաջի քո Քրիստոս Աստուած՝ բուրումն" եւն: ‖129 A "քո մատուցարանդ." N² "քո մատուցարանս:" ‖130 A "...եւ զպարգեւս է Հոգւոյդ սրբոյ" եւն: ‖131 MA հոս շատ կը շեղի՝ կցելով խնկման աղօթքիս ուրիշ մասեր ալ, այսպէս. "Եւ խնկէ զընծայսն եւ երիցս անգամ երկրպագէ. Տէր Աստուած որ ընդունեցար (այսպէս) զԱբելի զընծայսն, զՆոյի, եւ զԱբրահամու զոհսն, զԱհարոնի եւ զԶաքարիայի զխունկսն. ընկալ ի ձեռաց մերոց մեղաւորաց զխունկս զայս ի թողութիւն մեղաց մերոց եւ ամենայն ժողովրդեան քում: Զի աւրհնեալ եւ փառաւորեալ է ամենապատիւ եւ մեծվայելուչ անուանդ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգ.: — Տէր մեր աւրհնեա զխունկս զայս, եւ ընկալ ի հոտ անուշից շնորհաւք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: — Խունկս աւրհնեալ ի քէն Տէր արծարծեսցի առաջի քո ի հոտ անուշից. եւ գթութիւն քո ի ջցէ առ մեզ շնորհաւք Տեառն մերոյ: — Ուղիղ եղիցին աղաւթք իմ, որպէս խունկ առաջի քո Տէր. համբարձումն: Եւ տուր արկանէ շուրջ զսեղանովն հպատակաբար" եւն (որմէ սկսեալ կայ արդէն ի N): ‖133 MA "...գոլովն մն" (փխ. "գոլով նմին"): ‖134ff MA "Եւ կէսսարկաւագն առաջի մոմեղինաւ, իջանէ քահանայն բուրվառովն ի մէջ եկեղեցւոյն եւ խնկէ ամենայն բազմութեան ժողովրդեանն. եւ ինքնին վերստին դառնայ ի խորանն սուրբ: Եւ դարձեալ արկանէ սեղանոյն" եւն:

Դ. ‖141 MA "Եւ +հ. տէ. Աւրհնեալ թագաւորութիւնն" եւն: ‖142–43 MA "Սարկաւագն առ դրան խորանին բարձր եւ է Եկ+ քարոզէ ժողովրդեանն ասելով. Եւ եւս" եւն: ‖146–47 MA եւ N² "ամենեցուն աւրհներգութեան" (N²

*հներգուացս զտէր աղա։ — Վասն սրբոյ տաճարիս, եւ որոց հաւատով ընկալեալ զերկեղ տեառն աղօթեն ի սմա զտէր աղաչեսցուք։ — Վասն հայրապետին մերոյ կենաց եւ փրկութեան հոգւոյ զտէր աղա։ — Վասն պատուական քահանայից, եւ որոց ի Քրիստոս սարկաւագաց եւ ամենայն ժառանգաւորաց եկեղեցւոյ զտէր աղա։ — Վասն բարեպաշտ եւ աստուածապահ թագաւորին մերոյ, եւ ամենայն պաղատանն եւ ամենայն զինուորաց նորա զտէր աղա։ — Վասն լինելոյ նորա յաղթող, եւ խորտակելոյ զամենայն թշնամիս առ ոտս նորա զտէր աղա։ — Վասն ամենայն քաղաքաց եւ գաւառաց, եւ որոց հաւատով բնակեալ են ի նոսա զտէր աղա։ — Վասն պտղաբերութեան երկրի, եւ ժամանակաց զտէր աղա։ — Վասն ճանապարհորդաց, նաւորդաց, վաստակաւորաց, եւ վասն փրկութեան գերեաց զտէր աղա։ — Վասն փրկելոյ զմեզ ի վշտաց, եւ ի նեղութեանց զտէր աղա։ — Ընկալ կեցո եւ պահեա զմեզ տէր քոյին շնորհիւդ։ Կեցո տէր։ — Զամենասրբուհի աստուածածինն զամենաւրհնեալ տիրուհին, եւ զմիշտ կոյսն Մարիամ յիշեսջիք եւ զամենայն սուրբս եւ նոքաւք զտէր աղա։ — Յիշեա։ — Եւ եւս առաւել վասն միմեանց եւ միաբան ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս զտէր աղա։ — Զանձինս մեր։ Քեզ տեառն յանձն եղիցուք։ Ողորմեաց մեզ տէր Աստուած։*

Եւ քահանայն խորհրդաբար ասէ զաղօթս: Բայց պարտ է գիտել, զի զայս եւ զորս յետ այսորիկ աղօթանի՝ ոչ մնայ մինչեւ յաւարտումն քարոզին. այլ մինչդեռ սարկաւագն ընդ ժողովուրդն խաւսի բարձր, նա աղաւթիւքս ի ծածուկ ընդ Աստուած, եւ յաւարտելն նորա զքարոզն, քահանայն զփառսն աւարտէ՝ բարձրաբարբառ ի լուր ժողովրդեանն. որպէս զի միաձայն ասասցեն զԱմէնն։ Այս է սահման բնաւիցդ: *Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ անքնին է, եւ փառքդ անհասանելի. որոյ ողորմութիւնդ անչափ է, եւ գթութիւնդ անբաւ. դու ըստ առատ մարդասիրութեան քում նայեա ի ժողո-*

---

մի օր. "օրհներգութիւն։") — N² յաջորդը կը սկսի՝ "վասն սուրբ տանս այսմիկ" եւն (փխ. "սրբոյ տաճարիս։") ‖[148] նաեւ N² "զերկեղ." MA "զերկիւղ։" ‖[149] MA "...հայրպ. մերոյ այս անուն կենաց" եւն։ ‖[157] MA եւ N² "վասն գերեաց փրկութեան" եւն։ ‖[158] MA "ի նեղութենէ։" ‖[159] MA եւ N² "ընկալ, կեցո, եւ ողորմեա եւ պահեա. զմեզ Տէր քոյն (N² քոյին) շնորհիւդ։ Ժող. Կեցո Տէր" եւն։ MA միշտ "քոյն" կը գրէ, զոր այլուր չենք յիշեր։ — N² "Զսրբուհի Աստուածածինն" եւն։ ‖[160] MA եւ N² "զաւրհնեալ տիրուհին։" ‖[161] N (գոնէ տպուածը) "յիշեսջիք։ — "Յիշեա" չունի MA եւ N²։ ‖[161–62] MA եւ N² "Եւ եւս միաբանութեամբ (N² միաբան) վասն ճշմարիտ սուրբ հաւատոյս զՏէր աղաչ.։" ‖[163] MA լիակատար կը գրէ. "Զանձինս մեր զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալի յանձն արասցուք։ Դպ. Քեզ Տեառն յանձն եղիցուք։ Սրկ. Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ՝ Տէր ողորմեա։ Ժողով. Գ. Տէր ողորմեա։ Եւ քահանայն" եւն։ ‖[166–67] MA "նա քահանայն աղաւթիւքս" ...եւ յաւարտելն զքարոզն, նա քահանայն զփառս աւարտէ" եւն։ ‖[169ff.] Աղօթքս եւ MA տես վերն էջ 358։ MA եւ N² չունին "բարձր" խորագիրն (ի տողն 174) եւ անկէ յառաջ կ'ըսեն "զողորմութիւն քո եւ զգթութիւն։" A

վուրդս քո եւ ի տաճարս յայս սուրբ. եւ արա ընդ մեզ եւ ընդ աղաւթակիցս մեր առատապէս զողորմութիւնս քո եւ զգթութիւն։ — *Բարձր.* Զի քեզ վայելէ ամենայն փառք, պատիւ եւ իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից։ — *Ժողով.* Ամէն։

Ե. — *Յետ այսորիկ ասեն զսաղմոս զայս ի ձայն դաս դաս՝ ըստ ութից ձայնից Խոնարհեցոյիցն յեղանակաց.* Բարի է խոստովան լինել տեառն, սաղմոս ասել անուան քում բարձրեալ։ Փառք քեզ Աստուած, *ի բուն:* Ուղիղ է տէր Աստուած մեր, եւ ոչ գոյ ի նմա անիրաւութիւն։ Փառք քեզ Աստուած։ Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Փառք քեզ Աստուած։ Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտ.։ Փառք։ *Եւ միաձայնեալ երկու դասն ընդ մի բերան ասեն զայս զկնի.* Միածին Որդի եւ բանդ Աստուած, եւ անմահ էութիւն, որ յանձն առեր մարմնանալ ի սուրբ աստուածածնէն, եւ ի միշտ կուսէն։ Անփոփոխելիդ մարդ եղեալ եւ խաչեցար, մինդ ի սրբոյ Երրորդութենէն, փառակից ընդ Հաւր եւ ընդ սրբոյ Հոգւոյդ, կեցո զմեզ։ — *Սարկաւագն.* Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչ։ — *Ժողովուրդն.* Ընկալ կեցո եւ ողորմեա, եւ պահեա զմեզ տէր քոյին շնորհիւդ։ — Զսրբուհի աստուածածինն զաւրհնեալ տիրուհին եւ միշտ կոյսն Մարիամ։ Եւ եւս միաբան։ Զանձինս։ Ողորմ։

*Քահանայն, մինչդեռ քարոզէ, ասէ խորհրդաբար.* Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս քո, զլրումն եկեղեցւոյ քո պահեա. սրբեա զսոսա որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո։ Դու զմեզ փառաւորեա աստուածային զաւրութեամբ քով, եւ մի թողուր զյուսացեալքս ի քեզ։ — *Ի ձայն.* Զի քո է կարողութիւն եւ զաւրութիւն եւ փառք այժմ եւ միշտ։

---

“... Դու Տէր ըստ առատ մարդասիրութեան քո ... եւ ի տաճարս յայս (= N²), եւ արա„ եւն։ Վերջը A եւ N² “Զի սուրբ ես Աստուած մեր եւ քեզ փառք յաւիտեանս։„

Ե. ‖[176] MA “...դաս եւ դաս ըստ ութ ձայնից Խոնարհեցոյիցն եղանակացն։„ ‖[177] N² “...լինել Տեառնդ։„ ‖[178–82] “Ի բուն„ չունի MA որ ասկէ ետքն ալ մինչեւ “Միածին Որդի„ եւն տարբեր ունի, այսպէս. “Պատմել առաւաւտու զողորմութիւնս քո եւ զճշմարտութիւնս քո ի գիշերի։ Փառք քեզ Աստուած։ Եւ այսպէս ասեն մինչեւ ի կատարումն սաղմոսին։ Եւ է կատարմանն միաբանել երկու դասն ընդ մի բերան ասեն զայս զկնի. Միածին„ եւն։ ‖[182–85] Ժամամուտս “Միածին Որդի„ ունի MA ձեռագիրն Nէն քիչ մը տարբեր, ճիշդ այնպէս՝ ինչպէս կայ վերը՝ էջ 359. (միայն ունի MA “ի սուրբ Աստուածածնէն... ի սրբոյ Երրորդութենէդ ... ընդ սրբոյ Հոգւոյդ։ Կեցոյ զմեզ։„) ‖[186] “Ժող. Ընկալ„ եւն ի N գրչի սխալ մ'ըլլալու է. MA լաւ եւս՝ “Ժող. Տէր ողորմեա։ Սրկ. Ընկալ„ եւն, որմէ ետքն ալ՝ “Ժող. Կեցոյ Տէր։ Սրկ. Զսրբուհի„ եւն։ ‖[192] Նաեւ N² “ողջունեցին.„ MA “զնոսա՝ որք ողջունեն„ եւն։ ‖[193] N² “զօրութեամբ քո„ եւն։ ‖[195] N² կամ Լամբրոնացի մեկնութեան մէջ ուրիշ կարգով ունի հոս բնագիրը. այսինքն աղօթքէս ետքը նախ կը մեկնէ “Տէր թագաւորեաց, վայելչութիւն„ եւն սաղմոսը լիակատար դնելով (էջ

Խաղաղութիւն։

*Որ հասարակաց զայս, եւ միաձայն մեզ ամենեցուն ուսուցեր աղօթել, եւ զերկուց եւ զերից միաձայնելոց յանուն քո զխնդրուածս պարգեւել խոստացար, դու եւ այժմ զծառայից քոց զխնդրուածս առ ի յօգուտն կատարեա, շնորհելով մեզ յայսմ յաւիտենիս զգիտութիւն քում ճշմարտութեան, եւ ի հանդերձեալն զկեանս յաւիտենականս պարգեւելով. զի բարերար եւ մարդասէր ես Աստուած, եւ քեզ վայելէ փառք, իշխան։ — Դարձեալ սաղմոս ըստ խորհրդոյ աւուրն դաս եւ դաս շարականաւ ասեն. Տէր թագաւորեաց։ Զգեցաւ տէր։ Շարական. Լուսով աստուած։ Բացան դր։ Տօնէ այսաւր Երուսաղէմ։ — Սարկաւագն ձայնէ. Պռաւսխումէ։ Եւ ասեն զերեքսրբեանն ժողովուրդքն:*

Զ. — Բայց պարտ է գիտել, թէ յորժամ հանդիսական տաւն լինի, կամ եպիսկոպոս ի խորհրդեանն, այլով աւրինակաւ է հրահանգութիւնս մինչեւ յայս վայր ի պատիւ աւուրն. այսինքն զի եպիսկոպոսին ոչ է անկ ի սկզբան ժամուցն մտանել ի խորանն, այլ այսպէս տնաւրինեսցի։ Աւագ երէցն եւ մի ոք ի սարկաւագացն կացեալ յեկեղեցին, եւ ասէ սարկաւագն որպէս վերոյ գրեալ է նմա սկսանել. Աւրհնեալ թագաւորութիւն։

Եւ մինչ սարկաւագն քարոզէ, եւ ժողովուրդն ասեն զՏէր ողորմեայն, գայ եպիսկոպոսն զգեստաւորիլ պատուակից քահանայիւքն, հանդերձ սարկաւագաւքն եւ կիսասարկաւագաւքն եւ այլ պաշտաւնէիւքն՝ որք հպատակ են նմա ըստ իւրաքանչիւր գործոց. եւ չէ պարտ այլում յայլ աշտիճանի գործ ձեռնամուխ լինել, որպէս ոչ փոքրն ի մեծին՝ այսպէս եւ ոչ մեծն ի փոքուն։ Այլ տարցին առաջի նորա նախ կիսասարկաւագն զմոմեղէնսն լուցեալս, յետ նորա ի նոյն կարգէն զգաւազանսն խաչագլուխսն. եւ նախ սարկաւագքն ունիցին զաւետարանն եւ զբուրվառն, եւ յետոյ նոցա քա-

---

296—302,) ասկէ ետքը "Որ հասարակաց զայս" եւն։ Սաղմոսի մեկնութեան հատուածը սա խորագիրն ունի՝ "Մեկնութիւն երկրորդ սաղմոսի երգոյն՝ որ յետ առաջնոյն։" ‖196 "Խաղաղութիւն" չունի նաեւ MA. ‖198–99 N² "...յանուն քո՝ խոստացար ընձեռել զհայցուածս։ Դու Տէր" եւն։ ‖201 MA "զկեանսն։" N² տարբեր՝ "եւ յապառնին զկեանս յաւիտենականս։" — MA ի յոյն. "Զի բարերար" եւն։ ‖202–206 MA "...ըստ խորհրդեան... ասացեն։ Տէր թագաւորեաց, վայելչութիւն զգեցաւ, զգեցաւ Տէր զաւրութիւն ընդ մէջ իւր ածաւ։ Լուսով աստուածութեան քո Քրիստոս լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի. պահեա զսա անշարժ յաւիտեան։ Տաւնէ այսաւր Երուսաղէմ հաւատացելոց բազմութիւն զնաւակատիս սուրբ եկեղեցւոյ. պահեա զսա անշարժ։ Բացան դրունք հաւատոյ նոր Սիոնի ընդունել զանմահ փեսայն յառագաստ, բաշխել զմարմին քո եւ զարիւն. պահեա զսա։ Սոր. յոյնէ. Պռաւսխոմէն։ Եւ ասեն զերեքսրբեանն ժողովուրդքն։" N² ասոր տեղ հոս կ'որոշէ "Եկայք ցնծասցուք" սաղմոսն ըսել։

Զ. ‖207 MA "...գիտել, եթէ..." եւն։ ‖208–12 MA "...ի խորհրդեան... հրահանգութիւն... այսինքն է զի նմա ոչ է անգ ի սկզբան ժամուն ...մի ոք ի սարկաւագացն" եւն։ ‖213–31 MA "...գայ եպիսկոպոսն զգեստաւորել ...եւ կէսսարկաւագաւքն... որք հպատակեն նմա ըստ իւրաքանչիւր

հանայքն դատարկ գան. եւ յետոյ քահանայիցն գայ եպիսկոպոսն՝ երկու սարկաւագ ունելով պաշտաւնեայս իւր, եւ մտեալ յեկեղեցին՝ յորում՝ որք ենն յիւրեանց պաշտամանն անվրդով, սոքա եկեալ կանգնին առ դրունսն. որպէս եւ գային նախ մոմեղինաւորքն, ապա որք զգաւազանսն ունին, եւ ապա սարկաւագքն, եւ յետ նոցա քահանայքն ոչ բոլոր, այլ մի զմիոյն կնի յերկայնսն տող երկու դաս մինչեւ ի դուռն՝ մէջն փողոց, եւ դէմք իւրեանց ի միմեանս: Եւ եպիսկոպոսն կանգնի ի նախադրունսն հուպ առ սեամսն ի մէջ, եւ միայն անշարժ եւ անփոփոխ պաշտելով զառաջին սաղմոսն. Բարի է խոստովան լինել տեառն. որպէս եւ գրեալ է: Եւ ասէ եպիսկոպոսն եւ քահանայն զաղաւթս նոցին. Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդս քո:

Քարոզէ սարկաւագն այն՝ որ յառաջն էր յեկեղեցին, եւ ոչ ի կարգս սոցա, այլ առ դուռն խորանին ըստ վերոյ գրելոցդ: Եւ սոքա ասեն զերկրորդ սաղմոսն՝ Տէր թագաւորեաց, խորհրդաւոր շարականաւն: Եւ քարոզէ զկնի այն սարկաւագն, եւ սոքա ասեն զաղաւթսն. եւ աւագ երէցն ի խորանն՝ Որ հասարակաց զայս, եւ միաձայն. զայն որ վերոյ փոխ է դրած առանձինն յայն աւրն այս սաղմոսիս ասասցեն: Եւ յետ աւարտելոյն այսաւր սաղմոս մի, այլ յաւելուն խորհրդապէս ի պատիւ աւուրն. եւ ասեն զայս ալէլուով՝ ըստ ութ ձայնիցդ Ապրեցոյին եղանակի դաս եւ դաս: Եկայք ցնծասցուք ի տէր. ալէլուիա: Կանխեսցի ալէլուիա. մինչեւ յաւարտ: Փառք Հաւր եւ Որդ. ալէլուիա: Այժմ եւ միշտ. ալէլուիա:

Եւ երբ զայս սաղմոսս սկսանին, թողու եպիսկոպոսն զիւր տեղն որ առ սեամսն, եւ գայ ընդ մէջ երկուց դասուցն հեզութեամբ, եւ ընդ իւր երկու սարկաւագքն. եւ սոքա որպէս կային՝ միայն անվրդով, եւ չփոփոխին զհետ նորա, այլ միայն մինչեւ նա գայ ի ծայր դասուցն ի մէջ տաճարին, եւ ապա շարժին քահանայքն յետուստ կուսէ՝ նախապատիւքն նախ, եւ այլն զկնի: Եւ գան զհետ եպիսկոպոսին երկու երկու հաւասարք միմեանց, եւ երկուք յետ նոցա, եւ ապա սարկաւագն, եւ ապա կիսասարկաւագն. որպէս զի լիցի այնմ որ բուն յառաջն էր կանգնեալ դէպ խորանին՝ բուն յետոյ շարժել ի գնալ. որպէս եպիսկոպոսն որ բուն յետոյ էր՝ բուն յառաջն եկն. եւ գնան եւ կանգնին առ դուրս խորանին՝ ըստ պատուոյ զկնի եպիսկոպոսին, նախ քահանայքն, եւ ապա այլքն որպէս ասացաւ: Զի լիցի այնմ որ յեկեղեցին յառաջ մտաւ ի խորանս բուն յետոյ մտեալ եւ եպիս-

---

գործոյ ... ոչ փոքր ի մեծին ... նախ կէս սարկաւագն ... յետ նոցա ի նոյն կարգէն ... եւ զբուրուառն ... եպիսկոպոսն առընթեր ունելով երկուս սարկաւագս պաշտաւնեայս իւր ... յիւրեանց պաշտամանն էն անվրդով ... առ դուրսն, որպէս ... եւ ապա սարկաւագն ... մի զմիոյ զկնի ի յերկայնսն տող ... Եւ ասէ եպիսկոպոսն զաղաւթս նորին. Տէր„ եւն: ‖[232—241] MA "...եւ ոչ է ի կարգս սոցա ...Որ հասարակաց զայս եւն. զայն որ ի վերոյ փոխ է գրած առանձինն յայն աւրն այս սաղմոսնխ ասասցեն. եւ յետ աւարտելոյն այս աւրս, սաղմոս մի այլ յաւելուն ... եւ զայս ասեն Ալէլուով ...Եկայք ցնծասցուք ի Տէր, աղաղակեսցուք առ Աստուած փրկիչ մեր, ալէլուիա: Կանխեսցուք առաջի նորա, ալէ.: Զի Աստուած մեր. ալէ.: Ի ձեռն նորա. ալէ.: Նորա է ծով եւ նա արար զնա եւ զցամ. ալէ.: Երբ զայս սաղմոսս„ եւն: ‖[248—56] MA "...եւ գայ ընդ մէջտեղւոյ եկեղեցւոյն եւ ընդ մէջ երկուց դասուցն ... երկու սարկաւագն ... ի

կոպոսն անդ յետոյ, աստ յառաջամոէ. բայց նախ քան զմտանելն մինչդեռ ամենայն եկեղեցին պաշտէ զսաղմոսն, խոնարհի եւ աղաւթէ ի ծածուկ. նոյնպէս եւ քահանայք ընդ նմա զաղաւթս զայս.

Տէր Աստուած որ կարգեցեր յերկինս դասս, եւ զինուորութիւնս հրեշտակաց եւ հրեշտակապետաց ի սպասաւորութիւն փառաց քոց, արա եւ այժմ ընդ մուտս մեր մտանել սրբոց հրեշտակաց, եւ լինել պաշտաւնակից մեզ եւ փառաբանակից քում բարերարութեանդ. զի քո է կարողութիւն եւ զաւրութիւն եւ փառք յաւիտեանս, ամէն։

Եւ որք առընթեր են ասեն զԱմէն։

Իսկ բովանդակ եկեղեցին զիւրեանց ասեն անմիջոց զսաղմոսդ, եւ նոքա զաղաւթս յայնժամ աւարտեն՝ եթէ Զեռք նորա ստեղծին զմեզ։ Իսկ ի փոխելն զմի ոտսն մտէ եպիսկոպոսն նախ առաջին ի խորանն, եւ ապա այլ քահանայքն. սաղմոս՝ Եկայք երկիր պագցուք նմա եւ լացց։ Նա ինքն է տէր Աստուած մեր։ Ի բուն զսաղմոս՝ շարականաւ. Այսաւր աստուածութիւնն զուարճանայ նոր. Այսաւր եւ մեք ցնծու. խնդայ եւ զուարճ։

Մինչդեռ եկեղեցին զսաղմոսն պաշտէ՝ մտեալ եպիսկոպոսն ի խորանն, եւ ընդ նմա քահանայն եւ սարկաւագն զկնի, եւ կիսասարկաւագն որպէս վերոյ գրեցաւ երկու երկու՝ որք եկին ընդ նմա յեկեղեցիս եւ այլ աւելի ոչ, երկրպագեն սեղանոյն, եւ կանգնին։ Եւ մատուցեալ սարկաւագն խունկ յեպիսկոպոսն, առնու եւ ասէ զաղաւթս խնկոցն. եւ եդեալ զխունկն առնու զբուրվառն եւ ինքնին խնկարկէ շուրջ զսրբով սեղանովն։ Առաջի նորա ունելով կիսասարկաւագն զմոմեղէնն, եւ սարկաւագն զկնի խնկանոցն, իսկ ապա նա գայ ի դասս քահանայիցն եւ ծխէ նոցա. ապա ինքն միայն յեկեղեցին, եւ որք ընդ նմա մոմեղէնն եւ խունկն, եւ ծխէ ամենայն լման եկեղեցոյն՝ մինչեւ ցյետին ժողովրդոցն, որպէս հրամայէ սուրբն Դիոնեսիոս։

---

յետուստ կուսէ... եւ այլքն զկնի եւ գան ընդ հետս եպիսկոպոսին... եւ ապա սարկաւագքն եւ ապա կէս սարկաւագքն ...որ բուն յառաջ էր՝ կանգնել դէպ ի խորանն՝ բուն յետոյ շարժիլ եւ գնալ. որպէս եպիսկոպոսն որ բուն յետոյ էր՝ յառաջ եկն... կանգնին առ գրունս խորանին... ի խորանս բուն յետոյ մտել. եւ եպիսկոպոսն որ անդ յետոյ, ասա յառաջ մտէ... նոյնպէս եւ քահանայքն ընդ նմա զաղաւթս զայս։„ ‖257–62 MA բոլորովին նոյն Nի հետ, միայն վերջը՝ “...եւ փառք, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտ.։„ Տես վերն էջ 360։ ‖261 MA “Եւ որք առընթեր են նմին, ասեն զԱմէնն։„ ‖263–68 MA “...զիւրեանցն ասեն անմիջաց զսաղմոսդ։ Եւ նոքա զաղաւթսն յայնժամ աւարտեն յորժամ սաղմոսն եթէ՝ Զեռք նորա ստեղծին զմեզ։ Իսկ ի փոխել զմի ոտնն՝ մտէ եպիսկոպոսն նախ առաջին ի խորանն, եւ ապա քահանայքն։ Եկայք երկիր պագցուք նմա, անկցուք նմա անկցուք եւ լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ ալէլուիա։ Նա ինքն է Տէր Աստուած մեր ալէլուիա։ Եւ այսպէս ասեն մինչեւ վճարի։ Ցետ սաղմոսին շարական ՁԳ. Այսաւր աստուածութիւնն զուարճ։ Այսաւր եւ մեք ցնծամք տաւն.։ Խնդայ եւ զուարճացիր եկեղեցի։„ ‖269–83 MA “..։ եւ ընդ նմա քահանայքն եւ սարկաւագքն զկնի եւ կէս սարկաւագքն... Եւ եդեալ է հուրն (N “զխունկն.„ բայց բուն օրինակն էր՝ “զհուրն„) առնու զբուրվառն...։ Առաջի նորա տանելով կէս-սարկաւագն զմոմեղէնն եւ սարկաւագն զկնի զխնկանոցն։ Իսկ նա գայ ապա ի դասս քահանայիցն եւ ծխէ նոցին. ապա իջանէ ինքն միայն յեկեղեցին... լման եկեղեցւոյն մինչեւ ցյետինս ժողովրդոցն...։ Իսկ... շարականս եկեղեցւոյն ... Պատախանէն„ եւն։

Իսկ պաշտաւնեայքն արտաքոյ խորանին պաշտեն զխորհրդական շարականսն եկեղեցւոյն, յերկարեալ մինչեւ նա աւարտէ զննկարկութիւնն, եւ դառնայ վերստին ի խորանն, եւ ծխէ սրբոյ սեղանոյն։

Եւ ապա սարկաւագն որ ունի զգործ քարոզութեանն ի մէջ եկեղեցւոյն, ասէ Պռաւսխումէ, եւ բարձրացուցանէ զաւետարանն ընդ բանին։

Ի. — *Ժողովուրդն.* Սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ. *երիցս ասէ: — Ու անդէն առ նմին խոնարհի քահանայն եւ ասէ զաղաւթս.* Աստուած սուրբ որ ի սուրբս բնակեալ ես, եւ երեքսրբեան ձայնիւ սերովբէք գովեն զքեզ, եւ քերովբէք փառաբանեն, եւ ամենայն երկնային զաւրութիւնք քեզ երկիր պագանեն։ Որ ի չգոյէ ի գոյ ածեր զամենայն արարածս, որ արարեր զմարդն ըստ պատկերի քում եւ նմանութեան, եւ ամենայն շնորհիւ քո զարդարեցեր զնա, եւ ուսուցեր խնդրել զիմաստութիւն եւ զգաւնութիւն. եւ ոչ անտես արարեր զմեղուցեալն, այլ եդեր ի վերայ նորա ապաշխարութիւն քաւութեան։ Որ արժանի արարեր զմեզ զխոնարհս եւ զանարժան ծառայս քո եւ ի յայսմ ժամու կալ առաջի փառաց սրբութեան սեղանոյ քո, եւ զաւրինաւոր երկրպագութիւն եւ զփառաբանութիւն մատուցանել քեզ։ Դու տէր ընկալ ի բերանոյ մեղաւորացս եւ զերեքսրբեան աւրհնութիւնս, եւ պահեա զմեզ քոյին քաղցրութեամբ. Թող զամենայն յանցանս զկամայ եւ զակամայ. սրբեա զհոգիս եւ զմարմինս մեր, եւ շնորհեա ի սրբութեան պաշտել զքեզ զամենայն աւուրս կենաց մերոց բարեխաւսութեամբ սուրբ աստուածածնին եւ ամենայն սրբոց որք յաւիտենից քեզ բարեհաճոյեցան. զի սուրբ ես Աստուած մեր, եւ քեզ փառք։

*Ու կատարի աղօթքս եւ երեքսրբեանն միանգամայն: — Սարկաւագն.* Ասացուք ամենեքեան միաբանութեամբ, տէր ողորմեա։ — *Ժողովուրդն.*

---

Ի. ‖285 N² "...որ մարմնացար եւ խաչեցար„ ունի։ — MA եւ AN² "Երիցս ասէ... խոնարհի քհ. եւ աղաւթէ.„ N² այս մասն ունի յէջն 313, ուստի կարգէն քիչ մը տարբեր։ ‖286ff Աղօթքս տես վերն՝ էջ 361—62։ — A "Աստուած սուրբ եւ ի սուրբս հանգուցեալ ես„ ունի (N² ալ մի օր. "հանգուցեալ„)։ ‖287—88 AN² "եւ երեքսրբեան ձայնիւ ի սերովբէից գովիս եւ ի քերովբէից փառաբանիս եւ յամենայն երկնային զօրաց երկրպագիս„ ունի։ — MA "ամենայն երկնային զինուորութիւնք„ ունի։ ‖289 AN² "...ի գոյ ածեր զարարածս ամենայն (A "...ածեր զամենայն, որ„ ունի), որ ստեղծեր զմարդն„ ունի։ ‖290 A "եւ ըստ նմանութեան„. յետոյ չունի "զնա„ եւ "ուսուցեր„, ուստի այսպէս՝ "շնորհիւ քո զարդարեցեր՝ խնդրել զիմաստութիւն„ ունի։ ‖292 A "եդէր„ ունի։ — MA "ապաշխարութիւն փրկութեան„ նոյնպէս N "ի լուանցս„ գրուած։ ‖296 MA "...մեղաւորացս՝ զերեքսրբեան„ ունի։ ‖297 MA եւ AN² "քաղցրութեամբդ. թող մեզ զամենայն յանցանս մեր զկամս (N² զկամայ) եւ զակամս„ (N² զակամայ.) AN² կը յաւելու՝ "գիտութեան եւ զանգիտութեան։„ ‖298 MA "սրբեա զհոգի եւ զմարմինս մեր.„ AN² "...զհոգի եւ զմիտս մեր։„ — A "շնորհեա սրբութեամբ պաշտել„ ունի։ ‖299 AN² սրբուհւոյ Աստուածածնին„ (N² Աստուածածնիք։) ‖301 MA "եւ քեզ վայելէ„ (փառք ունի), ‖302 MA "Իւ

Տէր ողորմեա։ — Յամենայն անձնէ եւ յամենայն մտաց զտէր աղա։ — Ամենակալ Աստուած հարցն մերոց, զքեզ աղա։ Լուր մեզ եւ ողորմեա։ — Վասն սրբոյ տաճարիս եւ հաւատացելոց՝ որք են ի սմա երկեղիւ տեառն զտէր աղա։ — Վասն փրկելոյ զմեզ յամենայն վշտաց եւ ի նեղութենէ զտէր աղա։ — Վասն բարեպաշտ թագաւորաց յաղթութեան եւ զաւրութեան, հանապազորդ խաղաղութեան եւ առողջութեան. եւ որպէս զի տէր Աստուած մեր առաւել գործակից լինի նոցա զտէր աղա։ — Ընկալ։ Զսրբուհի Աստուածածին։ Եւ եւս մի։ Զանձինս մեր։ Ողորմեա։ — Եւ վասն եղբարցս մերոց, եւ համաւրէն ամենայն ժողովրդեանս՝ որք եկին յամենապայծառ ի տաւնս տեառն մտադիւրութեամբ աղօթել զտէր աղա։

Քահանայն բազկատարած ասէ զաղաւթս. Տէր Աստուած մեր, զբազկատարած զաղաչանս ծառայից քոց վերընկալցիս եւ ողորմեսցիս ըստ մեծի ողորմութեան քում. զգթութիւն քո առաքեա ի վերայ մեր, եւ ամենայն ժողովրդեանս՝ որք ակն ունին առ ի քէն ողորմութեանդ. զի ողորմած եւ մարդասէր ես, եւ քեզ փառք։

Յետ այսորիկ երիցս երկրպագեալ համբուրեն զսեղանն. եւ ասէ սարկաւագն ցքահանայն. Յաստիճանն եկեսցուք։ Նւ ասէ սարկաւագն. Օրհնեա զաստիճանս զայս. եւ օրհնեալ բազմի, եւ տայ ի ձեռս նորա զաւետարանն: Յետոյ խոնարհեալ առ ոտս նորա առնուն հրաման, եւ ընդունի յինքն զնոյն ի ձեռանէ քահանային. ապա յետ ասելոյն ընթերցողին զառաքեալն եւ զալէլուան, զայս հանդերձ աւետարանաւն առ դուրս խորանին, կամ յամպոնն, եւ պաշտկամբ կիսասարկաւագի՝ ընթեռնու սարկաւագն զաւետարանն:

Ը. — Ապա թէ ըստ որում վերոյ գրեցաք, եպիսկոպոսն ձեռնադրութիւն հանդերձեալ է առնել սարկաւագի, կամ քահանայի, կամ թէ արքեպիսկոպոսն եպիսկոպոսի, ամենայն հաստատութեամբ պարտ է գիտել թէ այս է ժամանակն։ Զի թէ կիսասարկաւագի է՝ իւր զգեստովն եւ ուրարովն է ընդ նոսա, եւ թէ սարկաւագ՝ եւ քահանայ կամի լինել, իւրովն, եւ թէ քահանայ՝ եւ եպիսկոպոս կամի լինել, իւրով նափորտամբն է։ Յետ

---

քարոզէ նախասարկաւագն. Աստուցուք„ եւն։ ||[306] MA “երկիւղիւ։„ ||[310–13] MA լաւ եւս “...գործակից լինիցի նոցա զտէր աղաչեսցուք։ Ժող. Տէր ողորմեա։ — Վասն հոգւոցն հանգուցելոց որք։ Ընկալ կեցոյ եւ պահեա զմեզ Տէր քոին շնոր.։ Զսրբուհի Աստուածածինն։ Եւ եւս միաբ.։ Զանձինս։ Ողորմեաց։ Քհ. Բազկատարած„ եւն։ ||[314ff] Տես վերն էջ 364։ ||[317–18] MA “է յոյն. Զի ողորմած եւ մարդասէր ես (A կցէ “Աստուած„). քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պ.։„ ||[319] MA “համբուրեն։„ ||[320] MA “...Յաստիճանն եկեսցեն։„ ||[322] MA “առնու (ոչ “առնուն„) հրաման„ եւն, եւ քիչ մ՚եւքն “ընդունի յինքն զնոյն„ եւն։ ||[325] Այսպէս N “պաշտկամբ„ MA “եւ պաշտամամբ կէս սարկաւագին՝ ընթեռնու„ եւն։

Ը. ||[326–29] MA “...զի թէ սարկաւագ է՝ իւր զգեստովն եւ ուրարովն...։ Եւ յետ ասելոյ եպիսկոպոսին... ոչ նստի. այլ սարկաւագն (ոչ “սակայն„) որք զքարոզութիւնն ունին... ի խորանն են սարկաւագք...։ Եթէ սարկաւագ է ի լինել, ի վերայ աջեակ ծնկին ...զաղաւթս ձեռնադրութեանն„ եւն։

*ասելոյ եպիսկոպոսին զբազկատարած զաղաւթսդ՝ ոչ նստի: Այլ սակայն որ գքարոզութիւն ունի յաւելու վերստին ասելով զքարոզ ձեռնադրութեանն կարգի. եւ որ ի խորանն են սարկաւագքն առնուն զնուիրեալն ի դասակարգութենէն, եւ բերեալ արկանեն առաջի սրբոյ սեղանոյն, եւ ի ներքոյ ձեռին եպիսկոպոսին: Եւ թէ սարկաւագ է ի լինելն՝ ի վերայ ահեակ ծնկին, եւ թէ քահանայ՝ յերկուցն. իսկ եթէ եպիսկոպոս՝ զաւետարանն դնեն ի վերայ պարանոցին, եւ կատարէ ի վերայ նորա եպիսկոպոսն զաղաւթս ձեռնադրութեան իւր փոխումն:*

*Յետ այնորիկ վերաձառէ սարկաւագն առ ժողովուրդն. Աստուածային եւ երկնաւոր շնորհն ի ձեռն առնու զայս անուն յայս ինչ. եւ վկայեալ յամենեցունց, յաւելու եպիսկոպոսն զորս ըստ նմին աղաւթք խորհրդաբար: Եւ եթէ ձեռնադրեալն եպիսկոպոս է, այլ եպիսկոպոսունքն զձեռս ի վերայ դնիցեն եւ ձեռնադրողն ի գլխոյն:*

*Յետ կատարելոյն զայս աղաւթս փոխումն, թէ սարկաւագ աւծաւ, առնու եպիսկոպոսն զուրարն եւ ինքն դնէ ի վերայ ահեակ ուսին. ապա թէ քահանայ՝ ինքն եպիսկոպոսի փոխէ զուրարն ի վերայ երկուց ուսոցն, եւ զգեցուցանէ զնափորտն. իսկ եթէ եպիսկոպոս՝ արքեպիսկոպոսն ինքնին արկանէ զպատուական եմիփորոնն զլանջովքն: Եւ անհնարին է եւ զաղփաղփուն եւ անկար զերկուս աստիճանսն ի միում աւուր տալ. Թողցի ապա անիրաւութիւնն առ անաւրէնսն: Եւ երթեալ նստի արքեպիսկոպոսի յաթոռն, քահանայք ընդ նմա. իսկ ձեռնադրեալն մնայ առաջի սրբոյ սեղանոյն ի ծունկս, թէ սարկաւագ է կամ քահանայ՝ մինչեւ կրկնեսցի ի վերայ նորա աղաւթքն: Ապա եթէ եպիսկոպոսի՝ ոչ, այլ ընդ համապատիւսն նստցի. եւ յետ աւետարանին գայ առաջի սրբոյ սեղանոյն, եւ կատարեն զնոյն որպէս ցուցանեմք: Բայց այժմ նստեալ նոցա՝ գայ առ սաղմոսերգուն ի մէջ եկեղեցւոյն, եւ ինքն միայն առանց աւգնականի ասէ. Սաղմոս ասացէք Թագաւորին մերոյ, սաղմոս ասացէք:*

*Եւ առնու ի նմանէ ամենայն եկեղեցին եւ ասեն. Սաղմոս ասացէք Աստուծոյ մեր:*

*Ինքն դարձեալ միայն երկրորդէ. Ծափս հարէք ամ: Եւ զայս ասացեալ երկրպագէ յայսկոյս եւ յայնկոյս եւ գնայ: Կամ ընթեռնու զառաքեալն ըստ խորհրդեան աւուրն, կամ թէ կամի զձեռնադրութեան ընթերցուածքն՝ թէ աւրն այնր խորհրդոյ է.*

---

‖[340—44] MA "...վերայ ճակտ ... վկայեալ ամենեցուն...: Եւ թէ ձեռնադրեալն եպիսկոպոս է, այլ եպիսկոպոսունքն զձեռս ի վերայ [illegible] (N չունի) դիցեն„ եւն: ‖[345—55] MA "Յետ կատարելոյ... ինքն եպիսկոպոսն (N ար. "եպիսկոպոսէ„) փոխէ... զգեցուցանէ զնափորտն ...եմիփորոնն.... Եւ անհնար է եւ զաղփաղփուն եւ անկարթ (N անկար) զերկու աստիճանսն ի միում աւուր տալ, այսինքն սարկաւագութիւն եւ քահանայութիւն Թողցի...: Եւ երթեալ նստին. արքեպիսկոպոսն յաթոռն եւ քահանայքն ընդ նմա...: Ապա թէ եպիսկոպոս (N "եպիսկոպոսէ„)՝ ոչ...: Եւ յետ աւետարանին գան առաջի սեղանոյն„ եւն: ‖[356—58] MA "...ի մէջ եկեղեցւոյն... Սաղմոս ասացէք Աստուծոյ մերոյ, սաղմոս ասացէք Թագաւորին„ եւն: ‖[359—60] MA "Եւ առնու ի նմանէ զայն յետ առելոյն ամենայն եկեղեցին յայս կողմ եւ յայն կողմ, եւ ասեն. Սաղմոս ասացէք Աստուծոյ մերոյ, սաղմոս ասացէք Թագաւորին մերոյ, սաղմոս ասացէք:„ ‖[361—64] MA

*Պաւղոսի առաքելոյն ի կորնթացւոց Թղթոյն է ընթերցուածս։*

*Եղբարք, գովեմ զձեզ, զի զամենայն ինչ զիմ յիշեցէք, եւ որպէս աւանդեցի ձեզ՝ զաւանդութիւնսն ունիք. կամիմ զի գիտեցէք դուք եթէ առն ամենայնի գլուխ Քրիստոս է, եւ գլուխ կնոջ այր, եւ գլուխ Քրիստոսի Աստուած։ Ամենայն այր յորժամ յաղաւթս կայցէ, կամ մարգարէանայցէ, եւ զգլուխն ծածկեալ ունիցի՝ յամաւթ առնէ զգլուխ իւր. եւ ամենայն կին յորժամ յաղաւթս կայցէ, կամ մարգարէանայցէ բացաւ գլխով՝ յամաւթ առնիցէ զգլուխ իւր, զի այնպէս համարէ՝ եթէ գերծեալ իցէ։ Զի թէ ոչ սքաւղեսցի կինն՝ փոքրեսցէ զհերս իւր. ապա թէ անպատեհ է կնոջ փոքրել կամ գերծուլ՝ սքաւղեսցի։ Առն մարդոյ չէ պարտ ծածկել զգլուխ իւր, զի պատկեր եւ փառք Աստուծոյ է. իսկ կինն փառք առնն է։ Զի ոչ եթէ այր ի կնոջէ, այլ կին յառնէ. քանզի ոչ իսկ հաստատեցաւ այր վասն կնոջ, այլ կին վասն առն. վասն այսորիկ կինն պարտի շուք դնել գլխոյն վասն հրեշտակաց, բայց ոչ կինն առանց առնն, եւ ոչ այր առանց կնոջ, բայց ամենայն յԱստուծոյ։ Այլ դուք ձեզէն տուք զիրաւդ. արժան է կնոջ մարդոյ հոլանի յաղաւթս կալ առաջի Աստուծոյ. եւ ոչ բնութիւնն իսկ ուսուցանէ ձեզ, զի այր եթէ գիսաւոր է անարգանք են նմա, բայց կին եթէ գիսաւոր է՝ փառք են նմա. զի գէսք փոխանակ զգեստուտուեալ են նմա։ Ապա եթէ ոք կամեսցի հակառակող լինել, մեք չունիմք այնպիսի սովորութիւն, եւ ոչ եկեղեցիքն Աստուծոյ։*

ԽԻ. — *Ցետ ընթերցուածոյս երկրպագէ: Նւ դարձեալ սաղմոսերգոյն զայ, եւ սկսանի միայն ինքն՝ թէ փոքր է կամ մեծ առանց աւգնականի.* Ալէլուիա։ *Առնու ամենայն եկեղեցին զսոյն, եւ երկրորդեն,* Ալէլուիա. *յաւելուն դարձեալ զայս միայն.* Յարեաւ Աստուած եւ ցրուեցան։ *Նւ ի կատարումն երգոյս երկրպագէ յայսկոյս եւ յայնկոյս, ազդելով թէ աւարտեցի: Իսկ նորա ամենեքեան երկրորդեն զնոյն զնախասացեալն,* Ալէլուիա, ալէլուիա։ *Նոյն երգողն առնու դարձեալ բարձրագոյն,* Ալէլուիա. *եւ սարկաւագն ունե-*

---

"…Երկրորդ է (փխ. "երկրորդէ„) ծափս հարէք ամենայն հեթանոսք, աղաղակեցէք առ Աստուած ի ձայն ցնծութեան։ Եւ զայս ասացեալ… զձեռնադրութեան Եւտեւլ ընթերցուածքն ընթերցի. Պաւղոսի„ եւն։ ‖366–81 MA "Պաւղոսի առաքելոյ ի Կորնթացւոյ թղթոյն ընթերցուած։ ծող. Ընկ.։ — Եղբարք, գովեմ… զիմ յիշէք… յամաւթ առնէ զգլուխ իւր… բացաւ գլխով՝ յամաւթ առնէ զգլուխն իւր… թէ գերծեալ իցէ։ Զի եթէ ոչ սքաւղեսցի կինն… սքողեսցի… այր ի կնոջնէ, այլ կինն… վասն այնորիկ պարտի կինն… բայց ոչ կին առանց առն, եւ ոչ այր առանց կնոջ ի Տէր։ Զի որպէս կինն յառնէ, նոյնպէս եւ այր ի կնոջէ. բայց ամենայն յԱստուծոյ… ուսուցանիցէ զձեզ…։ Ապա թէ ոք…„ եւն։

Թ. ‖385–86 MA "սաղմոսերգուն գայ յառաջ, եւ սկսանի ինքն միայն՝ թէ փոքր է եւ կամ մեծ„ եւն։ ‖387–88 MA "առնու ի նմանէ ամենայն եկեղեցին…։ Ցուեկլու նա դարձեալ… եւ ցրուեցան ամենայն թշնամիք նորա. փախեան ատելիք նորա յերեսաց նորա։ Եւ ի կատարումն„ եւն։ ‖390 MA "…զնոյնն՝ զնախասացեալ Ալէլուն. Ալէլուիա„ եւն։ ‖392 MA "առ դուրս խորանին„ եւն։ ‖395 MA "ընդ ամենեսեան։„ ‖396–400 MA "Սող. Երկիւղածութեամբ լուարուք որբոյ աւետարանիս։ Քհ. ըստ Մատթէոսի սրբոյ աւետարանիս։ ծող. Փառք քեզ

լով առաջի զմոմեղէնան յալէլուս յետին՝ զայ առ դուռն խորանին ատեարանաւն, եւ ի կատարմանն ձայնէ՝ ոչ եղանակաւ, այլ միայն ինքն բարձրաբարբառ. **Օրթի.** — Քահանայն ի խորանէն դառնայ առ ժողովուրդն եւ խաչ հանէ ասելով. **Խաղաղութիւն ընդ ամենեսին:** — Ժողովուրդն. **Եւ հոգւոյդ քում:** — Սարկաւագն. **Երկիրպագութեամբ լուարուք:** — Քահանայն. **Սրբոյ աւետարանիս:** — Սարկաւագն միայն. **Պռօսխումէ:** — Ժողովուրդն. **Պռօսէօթէօս:** — Սարկաւագն ընթեռնու. **Տէր մեր Յիսուս ասէ. Մի համարիք եթէ եկի լուծանել զաւրէնս:** — **Վ Ջ. Նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից:** — Ժողովուրդն. **Փառք քեզ տէր Աստուած մեր:**

**Ժ.** — Եւ անդէն առ նմին սկսանին զհաւատամսն: Իսկ սարկաւագն տանի յետ ընթեռնլոյն զաւետարանն ի քահանայն համբուրել. եւ մինչ ժողովուրդն երգեն զհաւատամսն, մեկնէ զխորհրդականսն, ընդունի ի վերայ սեղանոյն զգուշութեամբ, եւ եպիսկոպոսն կամ արքեպիսկոպոսն եպիսկոպոսակցաւք. սարկաւագն հանէ զեմփորոնն, զի մինչեւ ցայժմ ի տեղին յորում նստեալ էին՝ էին կանգնեալ, եւ ոչ առաջի սեղանոյն: Ապա յետ հանելոյն զնոյն առնու սարկաւագն յահեկ բազկին վերայ ծզէ՝ որպէս եհան առանց ծալելոյ, եւ նա զայ առաջի սրբոյ սեղանոյն միայն նամփորտամբն. եւ թէ ոք ծեռնադրի՝ անդ է առաջի սեղանոյն ի ծունկս, եւ մնացէ եւս:

**Հաւատամք ի մի Աստուած Հայր ամենակալ, արարողն երկնի եւ երկրի՝ երեւելեաց եւ աներեւութից. եւ ի մի տէր Յիսուս Քրիստոս յՈրդին Աստուծոյ ծնեալն յԱստուծոյ Հաւրէ միածին, այսինքն յէութենէ Հաւր: Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ ծնունդ եւ ոչ արարած. նոյն ինքն ի բնութենէ Հաւր, որով ամենայն ինչ եղեւ յերկինս եւ ի վերայ երկրի, երեւելիք եւ աներեւոյթք. որ յաղագս մեր մարդկան, եւ վասն մերոյ փրկութեան իջեալ յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս ի Մարիամայ սրբոյ կուսէն Հոգւով սրբով. որով էառ մարմին՝ հոգի եւ միտք, եւ զամենայն որ ինչ է ի մարդ ճշմարտապէս**

---

Տէր Աստուած մեր: Սար. միայն. Պռաւխաւմէն: Ժող. Պռաւսէաւթէաւս: Սարկ. ընթեռնու. Տէր մեր Յիսուս Քրիստոս ասէ. Մի համարիք եթէ եկի լուծանել զաւրէնս կամ զմարգարէս, այլ լնուլ: Ամէն ասեմ ձեզ. մինչեւ անցցեն երկինք եւ երկիր, յովտ մի որ նշանախեց մի է՝ ոչ անցցէ յաւրինաց եւ ի մարգարէից մինչեւ ամենայն եղիցի: Որ ոք լուծցէ մի ինչ ի պատուիրանացս յայսցանէ ի փոքունց եւ ուսուսցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքայութեան երկնից: Իսկ որ արասցէ եւ ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից: Ժող: Փառք քեզ Տէր Աստուած մեր:„

Ժ. ‖401−409 MA "յետ ընթեռնլոյն տանի ... երգեն զհաւատոսն մեկնէ զխորհրդականսն գոյն (այսպէս) ի վերայ սեղանոյն զգուշութեամբ: Եւ թէ եպիսկոպոս է կամ թէ արքեպիսկոպոս ... զեմփորոնն ... ի տեղին ուր նստեալն էին ... յետ հանելոյ զնոյնն ... նափորտամբն„ եւն: ‖410 Դատե A "արարողն.„ MA "արարող„: ‖411 MA "եւ մի Տէր Յիսուս Քրիստոս Որդի (= A) Աստուծոյ ծնեալ (= A) յԱստուծոյ„ եւն: ‖419 MA "Չարչարեալ,

*եւ ճշմարտութեամբ քեզ երկիր պագանեմ. վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ. այժմ եւ միշտ: — Ժողովուրդն. Ամէն: — Քահանայն. Օրհնեալ տէր մեր Յիսուս Քրիստոս: — Ժողովուրդն. Ամէն:*

*Քահանայն դառնայ առ ժողովուրդն, եւ հրաման տայ երախայիցն ելանել ասելով. Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեան: — Սարկաւագն ձայնէ բարձր բարբառով. Որ երախայքդ էք երթայք: Մի ոք յերախայից, մի ոք ի թերահաւատից, եւ մի ոք յապաշխարողաց եւ յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս:*

*Ժողովուրդք հաւատացելոց. Մարմին տէրունական եւ արիւն փրկական կայ առաջի. երկնային զաւրութիւնքն յաներեւոյթս երգեն եւ ասեն անհանգիստ բարբառով. սուրբ սուրբ սուրբ Տէր զաւրութեանց:*

ԺԲ. — *Եւ սարկաւագն. Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ դպիրք ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս: — Դպիրքն միաձայնեալ*

---

եւն: ‖464 A "...յամենայն չարեաց" (փխ. "չարէ:") — N² "Հաւատարեցա րնդ ճշմարիտ" եւն (չունի "զմեզ"): ‖465 A "ճշմարտութեամբ երկիր պագանեմ" (չունի "քեզ"): ‖469 MA չունի "Քահանայն", այլ պարզ. "Դառնայ առ ժողովուրդն" եւն: ‖471 MA չունի "բարբառով", եւ մնացեալն այլ տարբեր, այսպէս "Սարկ. ձայնէ բարձր. Որք երախայք էք՝ երթայք. երախայք էք՝ երթայք. որք երախայք էք՝ երթայք: Մի ոք" եւն: A "Որք երախայք էք՝ ելէք. (կրկին անգամ.) մի ոք յերախայից եւ մի ոք ի թերահաւատից" եւն: ‖474Մ MA "Ժողովուրդ հաւատացելոց:" Տողը "Մարմին տէրունական" եւն նոյնպէս ունին նաեւ A եւ MA (միայն "երկնային զաւրութիւնք յաներեւոյթս" եւն:)

ԺԲ. ‖477 Հոս շատ մեծ տարբերութիւն մ'ունի MA՝ երկար կտոր մ'ունենալով ընծայից վերաբերութեան մասը, որուն համար կ'ըսէ յետոյ գրիչը թէ "յայլ տեղին է": Ահա այս մասն MAի համեմատ՝ "Սարկաւագն. Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ դպիրք ձայնիւք քաղցրութեան զերգս հոգեւորս: Եւ թէ հանդիսաւոր օր լինի եւ դպրացն վերաբերել կամի, այս է արարողութիւնն: Յորժամ սարկաւագն ասէ՝ Մի ոք յերախայից, եւ դպիրքն երգեն՝ Մարմին տէրունական, քահանայն մի սարկաւագաւ եւ դպրաւն երթայ եւ սեղանատունն, եւ սարկաւագն առնու եւ դպիրքն գինի, լուսեղէն եւ խնկոց, եւ սարկաւագն բուրվառով. եւ յորժամ կատարեն Մարմին տէրունականն, սարկաւագն ասէ բարձր ձայնիւ՝ Որք զքերովբէն. եւ առնու ի ձեռն սեղանէ առաջիկայ դուռն է ըսել: Եւ գան յարեւելից կողմն, եւ սարկաւագն ձայնէ բարձր՝ Ճանապարհ արարէք այնմիկ որ նստի ընդ, ի լման առնէ: Եւ ապա սկսանին Զկենդանարարն: Եւ երբ գան ի հարաւակողմն, Սարկ. ձայնէ բարձր՝ Աստուած ի հարաւոյ եկեսցէ. եւ ապա սկսանին՝ Զամենայն կենցաղականս: Եւ գան յարեւմտան կողմն. եւ քահանայն որ առնէ զխորհուրդն է ձեռն՝ աստայի բարձր ձայնիւ Համբարձէք իշխանք, ի լման առնէ զսաղմոսն: Իսկ երբ եղիջոտա [լուս] լինի պատարագաւոր ու զխորհուրդն մատուցանէ, դայ ընդ առաջ, եւ խնկարկէ եւ հարցանէ՝ Ո՞վ է սա Թագաւոր փառաց: Եւ սկսանին Որպէս զի զԹագաւորն ամենեցուն: Եւ երբ վերջն առնէ քահանայն. Համբարձէք իշխանք, ի լման առա: Եւ դրսեւ նա հարցանէ ընդ՝ Ո՞վ է սա Թագաւոր փառաց: Եւ ապա սկսանին՝ Եւ զհրեշտակացն հանդիսապէս ընծայեալ: Եւ երբ վերջն առնէ դարձեալ քահանայն՝ Համբարձէք իշխանք, ի լման: Եւ եղիջոտակն հարցանէ՝ Ո՞վ է սա Թագաւոր փառաց. եւ քահանայն առէ՝ Սա ինքն է Թագաւոր փառաց: Եւ երկրպագէ եւ առնու ի ձեռաց, եւ առէ

*երգեն զՈրք զքերովբէից: Եւ սարկաւագունքն գնան ի սարկաւագատունն, բերեն զսուրբ նուէրսն՝ մոմեղինօք եւ խնկովք. իսկ քահանայն խոնարհի եւ ասէ զաղաւթսն որ զկնի այսր է գրած, որպէս զի աղաւթքն եւ Որք զքերովբէիցն ի միասին աւարտեսցի: Որք զքերովբէիցն խորհրդաբար կերպարանիմք զխորհուրդս, եւ կենդանարար Երրորդութեանն զերեքսրբեան աւրհնութիւնս մատուցանեմք, զամենայն կենցաղականս ի բաց դնելով զգործ, որպէս զի զԹագաւորն ամենեցուն ընդունիցիմք, եւ հրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգ. ալէլուիա:*

*Մինչ նոքա զայս երգեն, սարկաւագքն զնուէրսն զգուշութեամբ վերաբերեն ի սեղանն. եւ քահանայն կայ ի խոնարհ եւ աղաւթէ ի ծածուկ այսպէս. Ոչ որք արժանի է յըմբռնելոցս մարմնաւոր ախտիւք ցանկութեան մատնել ի սեղան քո, կամ սպասաւորել արքունական փառաց քոց. զի պաշտել զքեզ մեծ եւ ահաւոր զաւրութեանց իսկ է. սակայն վասն անչափ բարերարութեանդ քո անպարագրելի բանդ Հաւր եղեր մարդ, եւ քահանայապետ մեր երեւեցար. եւ իբրեւ տէր ամենեցուն այսմ սպասաւորութեան եւ անարիւն զենման զքահանայութիւն աւանդեցեր մեզ: Վասն զի դու ես Տէր Աստուած մեր որ տիրես երկնաւորաց եւ երկրաւորաց, որ ի վերայ քերովբէական աթոռոյ բազմիս, սերովբէից տէր, եւ Թագաւոր Իսրայէլի: Որ միայն սուրբ ես եւ ի սուրբս հանգուցեալ, աղաչեմք զքեզ միայն բարերար եւ հեշտալսելի, նայեա յիս ի մեղուցեալ եւ յանպիտան ծառայս քո, եւ սրբեա զհոգի եւ զմարմին իմ յամենայն պղծութենէ չարին, եւ բաւականացո զիս զաւրութեամբ սրբոյ Հոգւոյդ՝ որ զգեցեալ եմ զքահանայական շնորհ կալ*

---

Աւրհնեալ եկեալ անուամբ Տեառն: Եւ հանէ ի սեղանն, եւ երթեն զԱմբիոն: Եւ երգեն Հլովել, սարկաւագն փարողէ՝ Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք: Յայլ տարինակի արարողութիւն այլ այս է. Դպիրքն միաձայնեալ երգեն„ եւն (որ կայ արդէն վերը N բնագրին մէջ ալ, հմձ. ժԲ:) ||[479] MA "Դպիրքն միաձայնեալ երգեն Որք զքերովբէիցն. եւ սարկաւագքն գնան ի սարկաւագատունն, եւ բերեն„ եւն: ||[480—81] MA "իսկ քահանայքն խոնարհին եւ ասեն զաղաւթսն„ եւն: ||[482] MA "Որք ըստ քերովբէից... կերպարանեմք„ եւն: Իսկ AN² չունին "զխորհուրդս„, ուստի պարզ՝ "Որք զքերովբէիցն խորհրդաբար կերպարանիմք, եւ կենդանարար„ եւն: ||[484ff] AN² եւ MA "Զամենայն զկենցաղականս... զգործ (A "զգործս„)... եւ զհրեշտակացն հանդիսապէս... զկարգ (MA "զկարգս„.) ալէլուիա:„ ||[487—88] MA "...վերայբերեն... կայ խոնարհեալ եւ աղաւթէ„ եւն: ||[489] MA եւ N² "Ո՞չ ոք արժանի է յըմբռնելոցս այս (չունի N²) մարմնաւոր ախտիւք կամ ցանկութեամբ մատչել ի սեղան քո„ եւն. A "Ոչ ոք է արժանի յըմբռնելոցս մարմնաւոր ախտիւք եւ ցանկութեամբ մատչել„ եւն: ||[491] MA եւ AN² "...եւ ահաւոր երկնաւոր զաւրութեանց„ (A զօրութեանցդ) իսկ է„ եւն: ||[492] "Հաւր„ չունին MA եւ AN²: ||[496] A "քերովբէական աթոռոյ„ եւն: ||[497] MA եւ AN² "աղաչեմք զքեզ այժմ միայն բարերար եւ հեշտալսելի (A յաւ. "Տէր„), նայեա„ եւն. ||[499] MA եւ AN² "սրբեա զհոգի եւ զմիտս իմ„ եւն: ||[500] AN² "սուրբ Հոգւոյդ„ եւն: — Նոյնպէս եւ MA "որ զգեցեալս եմ." իսկ կից "զքահանայական շնորհ„ ունի այսպէս նաեւ N² (MA "զքահանայականս շնորհս." A "զքահանայական

*առաջի սրբոյ սեղանոյս եւ քահանայագործել զքո անարատ մարմինդ եւ զպատուական արիւնդ։ Քեզ խոնարհեցուցեալ զպարանոցս իմ եւ մաղթեմ, մի մերժեր զիս, եւ մի դարձուցաներ զերեսս քո յինէն. այլ արժանի արա մատուցանել քեզ զընծայս զայս ի մեղուցեալ եւ յանարժան ծառայէս քումմէ. վասն զի դու ես որ մատուցանես եւ մատչիս եւ ընդունիս եւ տաս Քրիստոս Աստուած մեր. եւ քեզ փառք վերառաքեմք հանդերձ անսկիզբն քո Հարբդ, եւ ամենասուրբ Հոգւովդ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Ու կատարի խորհրդաւոր աղաւթքս, եւ սրովբէական երգն միանգամայն. ապա սարկաւագն առ դուրս խորանին քարոզէ, եւ կիսասարկաւագն ջուր բերեալ քահանային լուանալ զձեռս առաջի սրբոյ սեղանոյն. եւ սարկաւագն՝ *Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։* — Ժողովուրդն. *Տէր ողորմեա։ Եւ եւս հաւատով եւ սրբութեամբ կացցուք առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ, եւ ահիւ. մի խղճիւ եւ գայթակղութեամբ, մի նենգութեամբ, խորամանկութեամբ, մի երկմտութեամբ եւ թերահաւատութեամբ, մի պատրանաւք եւ խաբէութեամբ։ Այլ ուղիղ վարուք, պարզ մտաւք, միամիտ սրտիւ, կատարեալ հաւատով, լցեալ սիրով, առաւելեալ եւ լի ամենայն գործով բարութեան. կացցուք յաղաւթս առաջի սրբոյ սեղանոյս, եւ գտցուք զողորմութիւն յաւուր յայտնութեան, եւ ի միւսանգամ գալստեան տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Ամենակալ տէր Աստուած մեր կեցո։* Ու ի հանդիսի աւր զայս քարոզն որ վերոյ գրեալ է:

---

չնորհս„)։ ‖502 Միայն A "...զպարանոցս իմ՝ մաղթեմ„ եւն։ ‖504 Նաեւ MA "յանարժան.„ AN² "ի— յանդիման ծառայէս„ եւն։ ‖506 Այսպէս "փառ+„ ունի նաեւ A, իսկ MA "փառս„ ուղղութեամբ։ ‖507 A "հանդերձ անսկիզբն Հարբդ„ եւն։ ‖509—12 MA "Եւ կատարի աղաւթքս եւ սրովբէականն երգքն... եւ կէս սարկաւագն ջուր բերէ քահանային լուանալ զձեռն առաջի սրբոյ սեղանոյն, նոյն ՌԵ ի— այլ ԻՆ ընդ նմա։ Սար. Եւ եւս„ եւն։ ‖513—20 MA եւ A "...մի նենգութեամբ ի— խորամանկութեամբ (A խորամանգութեամբ)... լի եւ առաւելեալ գործովք... եւ փրկչի... ամենակալ Տէր Աստուած մեր (A չունի չորս բառս այ) կեցուսցէ եւ ողորմեսցի։ Ժող. Կեցո Տէր։ ‖520—21 MA շատ կը շեղի հոս, այսպէս "Աղօ ՌԵ հանդիսական օր լինի, զայս արժան է ասել. Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ Ժող. Տէր ողորմեա։ — Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի եւ հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ եւ ամենեցուն աւրհներգութեան զՏէր աղաչ։ Վասն կատարելոյ Տեառն Աստուծոյ զհայցուածս եւ զխնդրուածս մեր զՏէր աղ.։ Վասն առաջադրեալ սրբոյ նուիրեալ պատարագիս զՏէր աղաչ.։ Վասն սրբոյ տաճարիս եւ հաւատացելոց որք են ի սմա երկիւղիւ Տեառն՝ զՏէր։ Վասն փրկելոյ զմեզ յամենայն վշտաց եւ ի նեղութենէ զՏէր աղաչ։ Ընկալ կեցոյ եւ ողորմեա եւ պահեա զմեզ Տէր քոյին շնորհիւդ։ Զսուրբ Մարիամ զաստուածածինն փառաւորեալ միշտ սուրբ զկոյսն, սուրբ զՅովհաննէս Մկրտիչն, սուրբ զՍտեփաննոս նախավկայն, սուրբ զառաքեալսն եւ զմարգարէսն. բարեյաղթող սուրբ զվկայսն, եւ զսուրբ խոստովանողն Քրիստոսի զհայրապետն մեր զՏէր Գրիգոր Լուսաւորիչ հայաստան աշխարհի յիշեսջիք եւ զամենայն սուրբս եւ նոքաւք զՏէր աղաչեսցուք։ Զժամ պատա-

ԺԳ. — *Քահանայն տարածեալ զձեռսն, եւ ի ծածուկ ասէ զաղաւթս զայս. — Աղաւթք Աթանասի.* Տէր Աստուած զաւրութեանց եւ արարիչ ամենայն լինելութեանց՝ որ յանէութենէ զնոսա ի գոյացութիւն ածեալ գոյացուցեր. որ եւ զմեր հողեղէն բնութիւն պատուեալ մարդասիրապէս, այսպիսի ահաւոր եւ անպատում խորհրդոյս կարգեցեր սպասաւորս։ Դու տէր որում պատարագեմք զպատարագիս, ընկալ առ ի մէնջ զառաջադրութիւնս զայս, եւ աւարտեա զսա ի խորհրդականութիւն մարմնոյ եւ արեան միածնի քո։ Պտղ թողութեան մեղաց պարգեւեա ճաշակողացս զհացս զայս եւ զգինիս։ Շնորհաւք եւ մարդասիրութեամբ տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հաւր եւ Հոգւոյդ սրբոյ փառք այժմ եւ։ — *Ժողով.* Ամէն։ — *Սարկ. առ դրունսն քարոզէ.* Ողջոյն տուք միմեանց։

Իսկ եթէ ձեռնադրութիւն լինի, ոչ այժմ ասեն զՈղջոյն տուք, այլ յետոյ ասելոյն եպիսկոպոսին զաղաւթսդ որ գրեցաւ. եւ Նուիրեալն ցարդ եւս անշարժ առաջի սեղանոյն է։ Որ եպիսկոպոսին առընթերակայ սարկաւագն է՝ զեմիփորոնն պատուոյ դարձեալ զգեցուցանէ նմա. եւ սարկաւագն որ ունի զքարոզութիւնն՝ արտաքոյ քարոզէ այժմ զձեռնադրութեան քարոզն՝ որպէս եւ է յայն կարգն ըստ իւրաքանչիւր պատուոյ գրեալ. այսինքն քահանայն Աստուած մեծն։ Թէ կամիս ասա զայն եւ սարկաւագութեան ձեռնադրութեանն։ Եւ մինչ նա զքարոզն ասէ եւ ժողովուրդն զՏէր ողորմեայն, Նուիրեալն ի ծունկս է առաջի սեղանոյն եւ եպիսկոպոսին։ Եւ դնէ եպիսկոպոսն զաջն ի վերայ գլխոյն որպէս կայ ի ծունկսն եւ չշարժի. եւ ասէ զաղաւթսն ըստ պատշաճին, որպէս զի ի վախճան քարոզին սա զիւրսն երգեսցէ. իսկ յետ այնր տուեալ զխաղա-

---

րադի եւ զառաջին.։ Զհրեշտակ խաղ.։ Զքաւութիւն։ Զորբոյ խաչ.։ Քրիստոնէութեամբ կատարել զկեանս։ Եւ եւս միա։ Զանձինս։ Ողորմ.։„

ԺԳ. ‖522–23 MA այս խորագիրն ունի՝ "Պատարագամատոյց զոր ասացեալ է Սրբոյն Աթանասի Աղեքսանդրացւոյ հայրապետի. Քահանայն տարածէ զձեռսն եւ ի ծածուկ ասէ. Տէր Աստուած„ եւն։ Իսկ N² (էջ 347) այսպիսի խորագիր ունի՝ "Մեկնութիւն առաջին աղօթից պատարագին Աթանասի. Տէր Աստուած„ եւն։ A անտ վերը։ ‖524 A եւ N² "եւ զմեր հողեղէն բնութիւնս.„ իսկ MA = N, մինչդեռ քիչ մ'ետքն ունի MA "անպատում խորհրդոյ կարգեցեր„ կ'ըսէ. AN² միաբան են N-ի։ ‖527 AN² "զպատարագիս.„ (MA = N.) ‖530–31 MA "...եւ փրկչիդ... ընդ որում եւ Հաւր եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք„ եւն A "...եւ Փրկչիդ... Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք„ եւն։ ‖532 MA "Սար. առ դուռն ձայնէ. Ողջոյն տուք միմեանց։ Եւ ողջունեն զմիմեանս եւ զինքեանս։„ ‖533–38 MA "Իսկ... ոչ ասէ այժմ զՈղջոյն տուինքն, այլ յետ ասելոյ եպիսկոպոսին զաղաւթսն, որ գրեցաւ. Նուիրեալքն եւ ցարդ եւս... ընթերակա սարկաւագն է՝ զեմիփորոնն... որպէս եւ է ի յայն կարգն... այսինքն թէ քահանայ է՝ Աստուած մեծ հզաւր. եւ թէ կամի՝ ասէ զայն եւ սարկաւագութեան ձեռնադրութեանն, նոյն եւ եպիսկոպոսութեանն։ Եւ մինչ նա... զՏէր ողորմեայն... որպէս կայ ի ծունկսն եւ ոչ շարժի, եւ ասէ զաղաւթսն ըստ ասպիճանին... ի համբոյր սրբութեան Նա որք ոչ... եւ առ դրունս են (A առ դուրսն են)...։ Եւ թէ քահանայ է կամ եպիսկոպոս, յետ Նուաստին կանգնի յաջ անդիւն սեղանոյն... Նա կանգնին ցեր նոցա մի յայս կոյս եւ մի յայն...։

ԺԷ. — *Քահանայն խոնարհի եւ ասէ.* Երկիրպագանեմք եւ աղաչեմք եւ խնդրեմք ի քէն բարերար Աստուած, առաքեա ի մեզ եւ յառաջի եղեալ ընծայս այս զմշտնջենաւորակից քո եւ զէակից սուրբ Հոգիդ: *Եւ կանգնեալ սարկաւագն, առնու եւ դողութեամբ ծգեալ զծեռն առնու զծածկոյթն ի սպասուցն, եւ խոնարհի ի յանկիւն սեղանոյն: Իսկ քահանայն կնքէ զնուէրսն յանեղն զայս. եւ սարկաւագն ասէ զԱմէնն միայն՝ ոչ բարձր:* Որով զհացս աւրհնեալ մարմին ճշմարտապէս արասցես տեառն մերոյ եւ փրկչի Յիսուսի Քրիստոսի: — *Սարկաւագն.* Ամէն: — Եւ զգինիս աւրհնեալ արիւն ճշմարտապէս արասցես տեառն մերոյ եւ փրկչի Յիսուսի Քրիստոսի: — *Սարկաւագն.* Ամէն: — Որպէս զի եղիցի սա ամենեցուն մեզ մերձեցելոցս յանդատապարտութիւն, ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց: — *Սարկաւագն.* Ամէն:

ԺԸ. — *Եւ համբուրէ քահանայն զսեղանն. եւ այսուհետեւ զծեռսն համասար նուիրացն խոնարհեցուցանէ, եւ զաչսն ի նոյն յառեալ ասէ անմռունչ.* Ամսաւ շնորհեա զսէր, զհաստատութիւն եւ զըղձալի զխաղաղութիւն ամենայն աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց, քահանայից, թագաւորաց աշխարհի, իշխանաց, ժողովրդոց, ճանապարհորդաց, նաւելոց, կապելոց, վտանգելոց, աշխատելոց, գերելոց եւ որք ի պատերազմունս բարբարոսաց: — Ամսաւ եւ աւդոց շնորհեա բարեխառնութիւն, եւ անդոց զպտղաբերութիւն, եւ ախտացելոց ի պէսպէս ցաւս զփութապէս առողջութիւն: — Ամսաւ հանգո՛ զամենեսեան ի Քրիստոս ննջեցեալ հարսն, զսուրբ հայրապետսն, զառաքեալս, զմարգարէս, զվկայեալս, զեպիսկոպոսունսն, զերիցունս, զսարկաւագունս եւ զինաւ ուխտս եկեղեցւոյ քում սրբոյ, եւ զա-

ԺԷ. ‖[646] MA եւ AN² "Երկիր պագանեմք„ եւն: ‖[647] MA "առաքեա ի մեզ ✝ եւ յառաջի եղեալ ընծայս ✝ (A ընծայս) յայս զմշտնջենաւորակից (նոյնպէս A, միայն N²ի երեք օրինակ "զմշտնջենաւոր„) քո„ եւն: ‖[650–652] MA "Եւ կանգնեալ սարկաւագն երկիւղիւ եւ դողութեամբ... զծածկոյթն սպասուցն, եւ խոնարհի յանկեան սեղանոյն... յանեղն զայս երիցս անգամ„ եւն: Ցետոյ MA "Որով զհացս ✝ օրհնեալ„ եւն. նոյնպէս յաջորդին՝ "Ե զգինիս ✝ օրհնեալ„ եւն: ‖[653] Ամէնքը "արասցես„, միայն A "արասցէ„ նոյնպէս յաջորդին մէջ բաժակին համար (տող 655:) — MA "Տեառն մերոյ եւ փրկչի„ եւն. AN² չունին "եւ փրկչի„ բառերը, թէեւ "Տեառն մերոյ„ կ'ըսեն MAի համեմատ. նոյնպէս բաժակին համար (տող 655:) ‖[655] MA եւ AN² "արիւն ստուգապէս արասցես„ եւն. (տես Ծան. ի տողն 653:)

ԺԸ. ‖[660] MA եւ AN² "զաչսն ի նոյնն յառեալ„ եւն: ‖[661] MA "զսէր եւ զհաստատութիւն„ եւն: ‖[663] MA "քահանայից, առաջնորդաց, թագաւորաց, աշխարհի իշխանաց.„ (AN² = N.) — MA ալ "ճանապարհորդաց.„ իսկ AN² "ճանապարհորդելոց„ մեր Սովորականին պէս: ‖[664] AN² չունին "նաւելոց, կապելոց.„ յաջորդն ալ ունին MA եւ AN² "վտանգելոց, աշխատելոց եւ որք (N² չունի "եւ որք„) ի պատերազմունս„ եւն. սատր "գերելոց„ կը պակսի, իսկ N² "աշխատելոց ի պատերազմունս„ եւն: ‖[666] MA "եւ անդեաց զպտղաբերութիւն„ փխ "աւդոց„: — A "...ցաւս՝ փութապէս առողջութիւն: ‖[667–9] MA եւ A "Ամսաւ հանգոյ„ եւն: — Յաջորդը MA եւ AN² "զամենեսեան յառա-

մենեւեան յաշխարհական կարգէ զայս եւ զկանայս հաւատով զվախճանեալս: — Ընդ որս եւ մեզ այց արասցես բարերար Տէր աղաչեմք: — Ժողովուրդն. Յիշեա Տէր եւ ողորմեա: — Քահանայն ի ձայն բարձր. Աստուածածնի սրբոյ կուսին Մարիամու, եւ Յովհաննու Մկրտչին, սրբոյն Ստեփաննոսի, եւ ամենայն սրբոց եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս աղաչեմք: — Ժողովուրդն. Յիշեա Տէր եւ ողորմեա.

*Սարկաւագն զայս այժմ՝ յաջակողմ՝ սեղանոյն զդէմն ուղղեալ ի պատարագն, եւ զձեռսն տարածեալ առէ զայս բարձր բարբառով ի լուր ժողովրդեան.* Առաքելոց սրբոց, մարգարէից, մարտիրոսաց եւ ամենայն սրբոց հայրապետաց, եպիսկոպոսաց, երիցանց, ուղղափառ սարկաւագաց եւ ամենայն սրբոց: — *Ժողովուրդն.* Յիշեա Տէր եւ ողորմեա: — *Սարկաւագն.* Սուրբ եւ աստուածահաճոյ հայրապետի, վկայի, կուս., ճգն. (*այսր անուան*) զորոյ զյիշատակն կատարեցաք այսաւր, եղիցի յիշ.: — Առաջնորդաց մերոց եւ առաջին լուսաւորչացն սրբոց, Թադէոսի առաքելոյ, Գրիգորի Լուսաւորչի, Արիստակիսի, Վրթանիսի, Յուսկանն, Գրիգորիսի, Ներսիսի, Սահակայ եւ ամենայն սրբոց հովուաց եւ հովուապետաց հայաստանեայց եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս: — Միանձնացելոց սրբոց, առաքինասէր կրաւնաւորաց, Անտոնի, Մակարայ, Մեսրովպայ եւ Գրիգորի, եւ ամենայն սրբոց հարց եւ աշակերտելոց նոցին որք ընդ տիեզերս, եղիցի յիշ.: — Թագաւորաց հաւատացելոց սրբոց Կոստանդիանոսի, Տրդատայ, Թէոդոսեցն, եւ ամենայն սրբոց թագաւորաց եւ իշխանաց եղիցի յիշ.: — Ընդհանուր ամենայն հաւատացելոց, արանց եւ կա-

---

ջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն (N² "զ՚ի Քրիստոս ննջ." A "ի Քրիստոս ընչ."), զսուրբ հարսն (N² հարս), զհայրապետս ... զեպիսկոպոսունս ... զքահս ուխտ" եւն: ‖670 MA "... բում սրբոյ զամենայն յաշխարհական կարգէ ... հաւատով վախճանեալս." (AN² = N) ‖671–75 AM "Զայն. Ընդ որս ... ողորմեա: Իշխն. Աստուածածնի ... Ստեփաննոսի ... յիշատակ սուրբ պատարագս" եւն. (AN² աւելի = N.) ‖676–7 MA "... յաջակողմն ... եւ զձեռսն եդեալ ի վերայ սեղանոյն առէ զայս բարձրաբարբառ ի լուր ժողովրդեանն: Սրբ. Առաքելոց" եւն: ‖678ff Ամբողջ քարոզութիւնս մինչեւ քահանային "Յիշեա Տէր եւ օրհնեա" եւն աղօթից սկիզբը (տող 707) չենք գտներ ի N², բայց կայ մեկնուած առ A. ‖679 MA "... եւ ամենայն սրբոց եղիցի յիշատակ սուրբ պատարագս աղաչեմք:" ‖680–1 MA "Սուրբ եւ աստուածահաճոյ հայրապետին, առաքելոյն, վկային, կուսին, ճգնաւորին այս անուն, զորոյ" եւն: A "... հայրապետի, վկայի այս անուն կուսին, զորոյ" եւն: ‖682–85 A "Առաջնորդացն մերոց ... Արիստակիսի ... Գրիգորիսի, Դանիէլի ... եւ ամենայն հովուացն եւ հովուապետացն" եւն: Իսկ MA "... Թադէոսի եւ Բարթողիմէոսի առաքելոցն" ... Արիստակիսի . . Ներսէսի" եւն. (Յուսկանը = N.) ‖686–88 MA "... կրաւնաւորացն ... Մեսրովպայ վարդապետին եւ ամենայն սրբոց հարցն" եւն. Պակաս չունի "Գրիգորի" զոր չունի նաեւ A, որ երկու անուն աւելի ունի՝ "... կրօնաւորաց Պօղոսի, Անտոնի, Պօղոյ, Մակարայ, Մեսրովպայ վարդապետին եւ սրբոց հարց" եւն: ‖689 MA "... սրբոյ Կոստանդիանոսի" եւն. A "... սրբոյ Աբգարու եւ Կոստանդիանոսի:" — MA "Թէոդոսի". (A = N "Թէոդոսեցն":) — MA "... սրբոց թագաւորաց եւ իշխանաց եւ այլոց, եղիցի" (A "... թագաւորացն եւ իշխանացն եղիցի" եւն:) ‖691 MA եւ A "... ազգայոց եւ ամենայն չափու (MA չափի) հասակի հաւատով եւ ուղղափառ

նանց, ծերոց եւ տղայոց, եւ ամենայն հաւատով ի Քրիստոս կատարելոց եղիցի յիշ.:

Ապա խունկ արկանէ շուրջ զսեղանովն. եւ քահանայն սկսանի զաղաւթսն, Յիշեա տէր եւ ողորմեա եւ աւրհնեա: Իսկ նախասարկաւագն յետ խնկարկութեանն զայ ի նոյն յաջակողմն սեղանոյն. դարձեալ կանգնի նոյնպէս, եւ յաւելու ասել զայս. Եւ եւս գոհութիւն եւ փառաբանութիւն մատուցումք առաջի Աստուծոյ մերոյ վասն սուրբ եւ անմահ պատարագիս որ ի վերայ սրբոյ սեղանոյս. զի զսա մեզ ի սրբութիւն կենդանութեան պարգեւեսցէ: Սովաւ շնորհեսցես զսէր, զհաստատութիւն եւ զողջամիտ զխաղաղութիւն ամենայն աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց. եպիսկոպոսապետին մերոյ, եւ եպիսկոպոսիս մերոյ, եւ քահանայիս որ զպատարագս մատուցանէ, եղիցի յիշ.: — Եւ վասն փրկութեան եւ զաւրութեան թագաւորաց քրիստոնէից եւ իշխանին մերոյ: Ազատութիւն եղբարց մերոց գերելոց, եւ շնորհ առաջիկայ ժողովրդեանս. հանգիստ հաւատով ի Քրիստոս ննջեցելոցն: — Ժողովուրդն. Ըստ ամենայնի, եւ յաղագս ամենեցուն:

Քահանայն մինչդեռ սարկաւագն զայս ասէ, զաղաւթսն կատարէ խորհրդի. Յիշեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զսուրբ կաթողիկէ առաքելական եկեղեցի քո՝ զոր փրկեցեր պատուական մարմնով եւ արեամբ միածնի քո, եւ ազատեցեր խաչիւն սրբով. շնորհեա սմա զանշարժ զխաղաղութիւն: Յիշեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս՝ որք ուղիղ վարդապետութեամբ հատանեն ի մեզ զբանն ճշմարտութեան: Եւս առաւել զեպիսկոպոսապետն մեր (զայս անուն) շնորհելով մեզ ընդ երկայն աւուրս ուղիղ վարդապետութեամբ: — Ժողովուրդն. Ամէն: — Յիշեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զքո առաջի կացեալ ժողովուրդս, եւ զպատարագիս մատուցողս, եւ պարգեւեա իւրաքանչիւրոց սոցա զպիտոյս եւ զաւգտակարս: — Յիշեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զուխտաւորս, եւ

---

ի Քրիստոս կատարելոց„ եւն: ‖[693-96] MA “Եւ ապա սարկաւագն խունկ արկանէ... աւրհնեա զսուրբ կաթուղիկէ: Իսկ սարկաւագն յետ խնկարկութեանն զայ յաջակողմն„ եւն: ‖[699] MA եւ A “Սովաւ շնորհեսցէ զսէր„ եւն: ‖[701] A “...եպիսկոպոսապետին մերոյ եւ պատրիարքին հայրապետին այս անուն (— Նոտրագիրն յետոյ կէտերով ջնջուած է —) եւ եպիսկոպոսիս եւ քահանայիս, որ„ եւն: ‖[703] MA “Իշխանի մերոյ:„ ‖[704] A “...առաջի կա ժողովրդեանս. հանգիստ հաւատով եւ սրբութեամբ ի Քրիստոս„ եւն: ‖[706] MA “մինչդեռ նա (փխ “սարկաւագն„) զայս ասէ„ եւն: Ասկէ կը սկսի գործածել N². ‖[707] A “կաթողիկէ եւ առաքելական.„ (N² ալ “կաթողիկէ„:) ‖[708] MA եւ AN² “...պատուական արեամբ„ եւն, ուստի չունին “մարմնով եւ„: ‖[709] MA “զանշարժ զխաղաղութիւն քո:„ ‖[711] MA “...հատանեն զբանն„ եւն. (չունի “ի մեզ„) AN² “հատանեն մեզ զբանն (A “զբան„) ճշմ.„: ‖[712] MA “Ի յոյն. Եւս առաւել„ եւն: — N² չունի “զայս անուն„ բառերն: ‖[713] “Ուղիղ վարդապետութեամբ„ չունի MA. (նոյն՝ AN²:) ‖[715] MA եւ A “զմատուցանողքս.„ (N² զմատուցողքս:) — A “պարգեւեա իւրաքանչիւր սոցա.„ յաջորդը՝ MA եւ AN² “զպիտոյսն եւ զաւգտակարսն:„ ‖[716] N² “...եւ ողորմեա զուխտաւորս„.

*զպտղաբերիչս եկեղեցւոյ քում սրբոյ՝ որք յիշեն զաղքատս ողորմածութեամբ. եւ հատո՛ նոցա զպարտս նոցա ըստ ընդարբոյս առատութեան քում հարիւրապատիկ աստ եւ ի հանդերձելումն։ — Յիշեա՛ տէր եւ ողորմեա՛ եւ գթա՛ ի հոգիս հանգուցելոցն. դասաւորեա՛ զնոսա այցելութեամբ ի լոյս երեսաց քոց ընդ սուրբս քո, եւ արժանաւորեա՛ ողորմութեան քո։ — Յիշեա՛ տէր եւ զայնոսիկ՝ որք յանձնեցին մեզ զինքեանս յիշատակել յաղաւթս զկենդանիս եւ զհանգուցեալս, եւ կառավարեա՛ զկամս հայցմանց նոցա եւ զմերս ընդ ուղղորդն եւ որ լին է փրկութեամբ. եւ վարձատրեա՛ բոլորեցունց զանանց եւ զերանելի զբարութիւնսդ. եւ զտեալ զխորհուրդս մեր տաճարացս ընդունելութեան մարմնոյ եւ արեան միածնի քո տեառն մերոյ եւ փրկչի Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հաւր միանգամայն եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ։ — Ժողովուրդն. Ամէն։*

*Քհն. — Քահանայն. Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսեան։ — Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։*

Սարկաւագն առ դուրս խորանին յետ այսր քարոզէ. եւ քահանայն ամէն զաղաւթսն. *Աստուած ճշմարտութեան*, ծածուկ զոյգ ընդ քարոզելոյն, որպէս զի ի միասին աւարտեսցի: — *Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչ.։ —* Ժողովուրդն. *Տէր ողորմեա։ — Ամենայն սրբովք զորս յիշատակեցաք, եւս առաւել զտէր աղաչ։ — Վասն մատուցեալ սուրբ եւ պատուական պատարագիս տեառն Աստուծոյ մերոյ զտէր աղաչ։ — Որպէս զի տէր Աստուած մեր*

---

ուստի չունի "եւ արքինք„ (յA ալ յետոյ գրուած է։) ‖[717] A "յիշեն զաղքատսն„ ենն։ ‖[718] MA "Եւ հատոյ զպարտս նոցա ըստ ընդարբոյս առատութեան քում աստ„ ենն։ N² "հատո նոցա զպարտս նոցին հարիւրապատիկ ըստ ...հանդերձելումն.„ իսկ A "հատոյ նոցին զպարտս հարիւրապատիկ ըստ... հանդերձելումն։„ ‖[720–1] MA "դասեա (փխ "դասաւորեա„) զնոսա... եւ արժանի արա (փխ "արժանաւորեա„) ողորմութեան քում։„ AN² ասոր տեղ՝ "Հանգո զամենեցեան եւ լուսաւորեա եւ դասաւորեա ընդ սուրբս քո յարքայութեան երկնից, եւ արժանի արա ողորմութեան քում„։ — Ասիկէ ետքը կը յաւելու N² (էջ 438) յաջորդ տողն ալ՝ որ մեր Սովորականին մէջն ալ կայ, այսինքն՝ "Յիշեա Տէր եւ զծառայս քո այս անուն. թէ կենդանի է՝ փրկեա. եւ թէ մեռեալ է՝ հանգո։„ Նոյնպէս ունի N² (էջ 429) "Յիշեա Տէր զերախտաւորս, զժողովուրդս, եւ ողորմեա նոցին եւ օրհնեա.„ որ ապա կոչում մ'ըլլալու է։ A չունի զասոնք։ ‖[722] AN² "յանձն արարին (փխ. "յանձնեցին„) մեզ յիշատակել յաղաւթս„ ենն. ուստի չունի նաեւ "զինքեանս„ բառը. (վերջինս չունի MA ալ։) ‖[723] Միայն N ունի "եւ կառավարեա„ ենն, միւսները չունին "եւ„։ — N² "հայցմանց նոցին„։ ‖[724] MA "ընդ ուղղորդն։„ — MA եւ N² "բոլորեցունցս։„ ‖[725] A "բարութիւնդ.„ N² "բարութիւնսդ։„ — MA եւ AN₂ "տաճարացս ընդունողութեան մարմնոյ.„ ենն։ ‖[726] A "...փրկչին Յիսուսի„ ենն. (N² "փրկչի Յիսուսի.„ ենն։) ‖[727] MA "ի յոյն. Ընդ որում քեզ Հաւր„ ենն։

Քթ. ‖[730–1] MA եւ A "...փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի † ընդ ձեզ ամենեսին...։ Եւ հոգւոյ քում։„ ‖[733] MA "...ասէ զաղաւթսն ծածուկ՝ Աստուած ճշմարտութեան, զոյգ ընդ„ ենն։ ‖[735–6] MA եւ A "Ամենայն սրբովք (A սրբօք) ...եւս առաւելապէս„ ենն։ ‖[737] A չունի "Տեառն Աստուծոյ մերոյ

*որ ընկալաւ զսա ի սուրբ եւ յերկնային եւ յիմանալի իւր մատուցարանն, փոխանակ առ մեզ առաքեսցէ զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյն սրբոյ զտէր աղա։ — Եւ. Եւս միա։ Զանձինս։ Ողորմ։*

*Քահանայն տարածեալ զձեռս, եւ ասէ ի ծածուկ ընդ քարոզին. Աստուած ճշմարտութեան, եւ Հայր ողորմութեան, գոհանամք զքէն որ ի վեր քան զերանելի նահապետացն զմեր պատուաւորեցեր առաւել մեծարեցեր զբնութիւնս. վասն զի նոցա Աստուած կոչեցար, իսկ մեզ հայր հաճեցար անուանիլ գթալով։ Եւ այժմ տէր աղաչեմք զքեզ, զայսպիսի առ ի քէն պատուական եւ զնորոգ անուանադրութեանս շնորհ աւր ըստ աւրէ պայծառացեալ ծաղկեցո ի մէջ եկեղեցւոյ քո։ — Եւ տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր, երգել եւ ասել։*

*Ժողովուրդն տարածեալ զձեռսն երգեն բարձր. եւ քահանայն ի ծածուկ։*

*Հայր մեր որ յերկինս ես, սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս եւ յերկրի. զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսաւր. Թող մեզ զպարտիս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց. եւ մի տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէ։ — Ի ձայն. Զի քո է արքայութիւն եւ զաւրութիւն եւ փառք այժմ։*

---

զՏէր„ բառերը։ ‖738–9 MA եւ A տարբեր եւ լիակատար "...Աստուած մեր ընկալցէ զսա ի սուրբ... մատուցարանն՝ զՏէր աղաչ։ (A Եւ) փոխանակ առ մեզ առաքեսցէ զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյ (A զպարգեւս եւ շնորհս Հոգւոյն) սրբոյ զՏէր։ Ընկալ կեցո եւ ողորմեա եւ պահեա զմեզ Տէր (A զմեզ Աստուած) քոյին շնորհիւդ։ Զսրբուհի Աստուածածին զաւրհնեալ տիրուհին եւ զմիշտ կոյսն. (A Զամենասրբուհի Աստուածածինն եւ զամենաւրհնեալ տիրուհին եւ զմիշտ կոյսն Մարիամ, յիշեսջիք եւ զամենայն սուրբս եւ նոքաւք զՏէր աղաչ։)„ — Աւելի ետքը միայն MA ունի յաջորդ տեղերն ալ՝ "Ի ժամ պատարագիս եւ զաւուրս։ Զհրեշտակ խաղաղութեան։ Զքաւութիւն։ Զսրբոյ խաչին։ Քրիստոնէութեամբ կատարեալ զկեանս մեր անար։ Զմիութիւն հաւատոյ ժողովրդեանս եւ զհաղորդութիւն Հոգւոյն սրբոյ ի Տեառնէ։ Եւ եւս միաբան վասն ճշմա.„ եւն։ ‖741 MA խորագրի տեղ այսպէս միայն "ՔՀՆ. շողոքին։„ ‖743 N² "զմեր զպարտաւորելոցս„ եւն։ ‖744 MA եւ A "մեծարեցեր զբնութիւն.„ (N² զբնութիւնս = N.) ‖746 N² "...եւ զնորոգ անուանակոչութեանն շնորհ„ եւն։ MA "...շնորհ հանապազ պայծառացեալ ծաղկեցոյ ուղղափառ ի մէջ սուրբ եկեղեցւոյ քո։„ AN² համաձայն են N-ի, բայց վերջին ունի A "ի մէջ սրբոյ եկեղեցւոյ քում։„ ‖747 MA "Ի ձայն. Եւ տուր„ եւն։ ‖749 MA եւ A "...տարածեալ զձեռս...„ A կցէ վերջը՝ "...(քհն. ի ծածուկ) ասէ զաղօթս։„ ‖750 A "որ յերկինս ես։„ ‖751 N² "եղիցին Տէր կամք քո.„ A "եղիցի կամք քո„։ — MA "որպէս յերկինսդ եւ յերկրի„ եւն։ ‖752 MA չունի "այսաւր։„ — MA եւ AN² "թող մեզ զպարտս մեր.„ (բայց N² քիչ մ'ետքը նաեւ "զպարտիս„ կը կարդայ։) ‖753 A "պարտապանացն։„ — MA "Եւ մի տար զմեզ ի փորձութիւն„ եւն։ — N² "այլ փրկեա զմեզ ի չարէն.„ (A չունի "զմեզ„, բայց՝ "ի չարէն.„ MA = N.) Աղօթքիս վերջը N² քիչ մ'ետքը (էջ 467) այսպէս ալ ունի՝ "Եւ մի տանիր զմեզ ի փորձութիւն, եւ մի ի դատապարտութիւն այլ փրկեա ի չարէն, եւ ապրեցո ի փորձութենէն։ Զի քո է արքայութիւն եւ զաւրութիւն„ եւն։ Մասնաւորութեան արժանի է հոս MA, որ մեր սովորական օրինակաց պէս կը կցէ այս տեղ. "Տէր տերանց, Աստուած աստուծոց, թա-

Քահանայն. Խաղաղութիւն ամենեցուն։ — Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։ — Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք։ — Ժողովուրդն. Առաջի քո տէր։

Ի. — Քահանայն խոնարհի եւ ասէ. եւ ամենայն ժողովուրդն խոնարհի. Որ աղբիւրդ ես կենաց եւ բղխումն ողորմութեան, Հոգիդ սուրբ, ողորմեա ժողովրդեանս որ խոնարհեալ երկիրպագանեն առաջի աստուածութեանդ քո. պահպանեա զսոսա ամբողջս, տպաւորեա յոգւոջ սոցա զձեւ մարմնոյ ցուցակի առ ի ժառանգութիւն եւ ի վիճակ հանդերձելոցդ փառաց, Քրիստոսիւ Յիսուսիւ տերամբ մերով ընդ որում քեզ Հոգւոյդ սրբոյ եւ Հաւր ամենակալի [վայելէ] փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։

Եւ սարկաւագն բարձր բարբառով ասէ յետ այսր. Պռոսխումէ։ — Քահանայն վերացուցանէ զընծայսն երկոքին ձեռաքն առաւել քան զգլուխ իւր եւ ասէ. Սրբութիւն սրբոց։ — Ժողովուրդն միաձայն աղաղակեն. Միայն սուրբ, միայն տէր՝ Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հաւր. ամէն։ — Քահանայն ունելով զնոյն ի ձեռին ասէ բարձր ի լուր ժողովրդեանն. Աւրհնեալ Հայր սուրբ ճշմարիտ Աստուած։ — Ժողովուրդն. Ամէն։ — Աւրհնեալ Որդիդ սուրբ ճշմարիտ Աստուած։ — Ժողովուրդն. Ամէն։ — Աւրհնեալ Հոգիդ սուրբ ճշմարիտ Աստուած։ — Ժողովուրդն. Ամէն։ — Աւրհնութիւն եւ փառք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ։

Քահանայն դարձեալ խոնարհի, եւ աղաւթէ խորհրդաբար. Նայեա տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից ի սրբութենէ քումէ եւ յաթոռոյ փառաց թագաւորութեան քո. եկ ի սրբել եւ ի կեցուցանել զմեզ՝ որ ընդ Հաւր նստիս, եւ աստ պատարագիս։ Արժանի արա տալ մեզ յանարատ մարմնոյ քո եւ ի պատուական արենէ եւ ի ձեռն մեր ամենայն ժողովրդեան։

---

զաւսք յաւիտենից, արարիչ ամենայն արարածոց, հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, մի տար զմեզ ի փորձութիւն եւ մի ի դատապարտութիւն, այլ փրկեա ի չարէ եւ ապրեցո ի փորձութենէ։ Ի յոյն. Զի քո է„ եւն։ ‖755 MA "Եւ հոգւոյ քում„։

Ի. ‖758 MA "...ժողովուրդն խոնարհին ի վայր։„ ‖759 "Հոգիդ սուրբ„ չունի MA եւ N². Նաեւ յA յետոյ աւելցուած են բառերս։ ‖760 MA եւ AN² "որք խոնարհեալ երկիրպագեն (AN² երկիրպագանեն) առաջի աստուածութեան (A աստուածութեանդ) քո„ եւն։ ‖761 A "ամբողջս ի—անարատս„ եւն։ ‖762 AN² "հանդերձեալ (հանդերձեալդ) փառաց„ (փխ. "բարեաց։„) ‖764 Միայն A ունի ուղղութեամբ "...ամենակալի վայելէ փառք„ եւն. միւսներն առանց բայի ունին նախադասութիւնս։ ‖766 MA "Պռոսխումէն.„ N² "Պռօսխումէն.„ A "Պռօսխումէ.„ ‖767 MA "...երկոքին ձեռամբ„ եւն։ ‖768 MA եւ A "Ի սրբութիւն սրբոց.„ N² "Ի սրբութիւնս սրբոց։„ ‖769 "Ամէն„ չունի N²։ ‖770 MA "...զնոյն ի ձեռս... ի լուր ժողովրդեանն։„ ‖771ff. Միայն A երեք անգամն ալ "...Աստուած ճշմարիտ„ (մեր ամփոփական Պատարագամատոյցին համեմատ. իսկ MA եւ N² = N.) ‖772ff MA եւ AN² "Աւրհնեալ Որդի սուրբ„ եւն։ MA նաեւ յաջորդը "Աւրհնեալ Հոգի սուրբ„ եւն (AN² "Հոգիդ„ = N.) ‖774 MA

*Ու զայս ասացեալ երկրպագէ, եւ համբուրէ զսեղանն. եւ յարուցեալ ծգէ զձեռն ի սուրբ մարմինն, եւ առեալ զնոյն ողջ թանայ յանապականն արիւնն: Ու ապա բարձրացուցանէ ակներեւ ժողովրդեանն, եւ ասէ առ նոսա բարձր.* **Ի սուրբ ի սուրբ պատուական մարմնոյ եւ յարենէ տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ՝ որ իջեալ յերկնից բաշխի ի միջի մերում: Սա է կեանք, յոյս յարութեան, քաւութիւն եւ թողութիւն մեղաց. սաղմոս ասացէք Աստուծոյ մերոյ, սաղմոս ասացէք երկնաւոր Թագաւորիս մերոյ անմահի, որ նստի ի կառս քերովբէականս:**

**ԻԸ.** — *Սարկաւագն.* **Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ դպիրք ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս. զի նմա իսկ վայելեն սաղմոսք, աւրհնութիւնք, ալէլուք. պաշտաւնեայք, հանդերձ երգով սաղմոս ասացէք, եւ զտէր յերկինս աւրհնեցէք:**

*Ու սկսանին եկեղեցին եղանակել.* **Քրիստոս պատարագեալ բաշխի:** *Իսկ քահանայն, մինչ նոքա յերգսն են՝ առնու զմարմինն ի ձեռսն, եւ համբուրէ արտասուաւք զայս ասելով.* **Խոստովանիմ եւ հաւատամ, զի դու ես Որդի Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի:** *Ու ընկեալ արկանէ ի բաժակն արեան ասելով.* **Լրումն Հոգւոյն սրբոյ:**

*Ապա խնդրէ ի ճշմարիտն Աստուծոյ զպէսպէս հայցուածս անձին եւ ժողովրդեանն՝ որչափ եւ կամի տալով յերկայնութիւն երգեցողացն: Ցետ այսր առեալ ճաշակէ ասելով.* **Մարմին պատուական եղիցի մեզ ի կեանս. եւ սուրբ արիւն քո ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց:** *Առնու եւ ի բաժակէ արեանն ճաշակ մի. եւ մինչ նա յայս է, դպիրքն պաշտեն: Հաղորդեցուցանէ եպիսկոպոսն զնոր ձեռնադրեալն, ոչ ի բերանն՝ այլ յափն տալով զսրբութիւն. Նոյն եւ զայլ քահանայսն:*

**(Դդ.) Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի մերում, ալէլուիա: Զմարմին իւր տայ մեզ կերակուր, ալէլուիա: Եւ սուրբ զարիւն իւր**

---

"...եւ Հոգւոյ սրբոյ. ժող. Ամէն:" ‖775 A "Նայեաց Տէր մեր" եւն: ‖778–9 MA լաւագոյն "յանարատ մարմնոյս եւ ի պատուական արենէս." AN² "յանարատ մարմնոյ եւ ի պատուական արենէս" եւն: — MA եւ AN² "եւ ի ձեռսն մեր (AN² "եւ ի ձեռս մեր":) ամենայն ժողովրդեանս: ‖781 MA "ձգէ զձեռնն" եւն: ‖783 AN² "Ի սուրբ ի սուրբ մարմնոյ" (ուստի չունի "եւ պատուական":) — MA եւ AN² "Տեառն մերոյ եւ փրկչի" (AN² փրկչին:) ‖785 Նաեւ N² "յոյս յարութեան:" MA եւ A "յոյս, յարութիւն" եւն: ‖786 "Սաղմոս ասացէք" եւն չունի N²: ‖787 MA "Թագաւորի մերոյ:" A "Թագաւորին մերոյ անմահի." (չունենալով մնացեալ բառերը:)

ԻԱ. ‖789 A եւ MA "զի սմա (MA նմա = N) վայելեն սաղմոսք եւ աւրհնութիւնք, ալէլուք եւ երգք հոգեւորք" եւն: ‖792–93 MA "Եւ սկսանի եկեղեցի... մինչ նոքա յերգս են" եւն: ‖797–98 MA "...եւ ժողովրդեանն եւ աշխարհի... տալով յերկարութիւն երգողացն: Ցետ այնորիկ առեալ" եւն: ‖799ff MA "Մարմին քո պատուական եղիցի ինձ ի կեանս" եւն. A "Մարմին քո անապական եղիցի մեզ ի կեանս" եւն: ‖800–803 MA "...եւ մինչ նա սոյն (N յաւ եւս "յայս է")... եւ հաղորդեցուցանէ... զսրբութիւնն. նոյնպէս եւ զայլ"

*ցաւղեաց ի մեզ, ալէլուիա: Մատիք առ տէր եւ առէք զլոյս, ալէլուիա: — (Բշ·) Լոյս ճշմարիտ եւ ճառագայթ Հաւր, ծագումն եւ կնիք, բան եւ ծնունդ, որ կանգնեցեր յեաւթեանց սեանց զեկեղեցի սուրբ, ածեալ ի սպանդ զեզն պարարակ: Շնորհեա մեզ կերակրիլ յիմաստութեան քում սեղանոյս. Ողորմեա: Ճաշակեցէք եւ տեսէք, զի քաղցր է տէր. ալէլ.: — (Գշ·) Հաց կենաց եւ անմահութեան ճաշակ, սուրբ եւ անճառ սոսկալի խորհուրդ, որ ի յերկնից իջեր կենդանութիւն մարդկան, կենդանի եւ կենդանարար. պարգեւեա քաղցելոցս զքաղցրութեան քում ճաշակումն. Ողորմեա: Աւրհնեցէք զՏէր յերկինս, ալէլուիա: — (Դշ·) Դուռն երկնից եւ ճանապարհ արքայութեան, տէր երկնի, յերկնայնոցն աւրհնեալ դասուց, որ զմարմին քո եւ զարիւն բաշխեցեր առաքելոցն. մաքրեա զմեզ հաղորդիլ սրբութեան քում խորհրդոյս. Ողորմեա: — Աւրհնեցէք զնա ի բարձունս. ալէլուիա: — (Եշ·) Բան Հաւր եւ քահանայապետ սուրբ, յանմարմնոց գովեալ ի բարձունս. որ ի վերայ խաչին պատարագեալ մարմնով՝ հեղեր զարիւնդ ի փրկութիւն. սրբեա զմեզս մեր կենարար եւ փրկական քաւիչ քո արեամբդ. Ողորմեա: Աւրհնեցէք զնա հրեշտակք նորա, ալէլուիա: — (Դշ·) Վէմ հոգեւոր եւ գլուխ անկեան ածեալ, մարեմանեալ ի հրեշտակաց. որ ի խաչին բացեր զկողահոս աղբիւրդ, զանմահութիւն ցաւղեալ տիեզերաց. արբո մեզ ծարաւեացս զբաժակ քո փրկութեան. Ողորմեա: Աւրհնեցէք զնա ամենայն զաւրութիւնք նորա, ալէլուիա: — (Եշ·) Գառն Աստուծոյ զենեալ միշտ եւ կենդանի, անմեղ եկեալ ի պատարագ, որ ի հաշտութիւն Հաւր պատարագեալ բառնաս զմեղս աշխարհի, յանմահից զաւրաց փառաւորեալ. յիշեա զհոգիս հաւատով ի քեզ ննջեցելոց մերոց. Ողորմեա: — Այս երգս ոչ եթէ հարկաւոր յամենայն աւուր պարտ է ասել ի լման, այլ բոլոր պատշաճին. փոխել պարտ է զժամանակն, եւ զկամս ժողովրդեան՝ որչափ կամի ի ճաշակելն զայն յերկարել: Իսկ զԱւրհնեցէքն ասել պարտ է, եւ զայս զինի նորին մի վասն կամ երկու կամ երիս, որչափ ժամանակն խնդրէ:*

---

*եւն: ||801—832 AN² չունին տողիս ամէն տներն, այլ միայն "զաւրհնեալդ" ըստ Լամբրոնացւոյ խրատագրին, ուստի՝ "Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի մերում, ալէլուիա: Զմարմին իւր տայ մեզ կերակուր եւ սուրբ զարիւն (N² զսուրբ արիւն) ցօղէ ի մեզ, ալ.: Մատիք առ Տէր եւ առէք զլոյս, ալ.: Ճաշակեցէք եւ տեսէք, զի քաղցր է Տէր, ալ.: Օրհնեցէք զՏէր յերկինս, ալէլուիա ալէլուիա: Օրհնեցէք զնա ի բարձունս, ալ.: Օրհնեցէք զնա (A ամենայն) հրեշտակք նորա, ալէլուիա: Օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա, ալ."* (*վերջինս չունի A, որ սակայն տեղ կը նշանակէ՝ "Լոյս ճշմարիտ եւ ճառագայթ:"*) – *Ամբողջն՝ ինչպէս հոս վերը գրուած է (առ N), ունի նաեւ MA, որմէ առած աւելցուցինք իւրաքանչիւր տան առջեւ գրուած "Բշ." "Գշ." մինչեւ "Զշ." եւ "Էշ." խրատագրոց համառօտութիւնքն: Բնագրին համար MA ունի հետեւեալ տարբերութիւնքն՝ "Քրիստոս ...ցաւղէ ի մեզ...: Լոյս ճշմարիտ եւ ճառագայթ, ծագումն... քում սեղանոյ...: Հաց կենաց եւ անմահութեան, ճաշակ սուրբ եւ անճառ,... քաղցելոցն զքաղցրութեան քո... յերկինս, ալէլուիա, ալէլուիա: Դուռն... եւ զարիւնդ անապական բաշխեցեր... քում խորհրդոյ...: Բան... յանմարմնոցն գովեալ... ալէլ. ալէլ.: Վէմ... արբո եւ մեզ...: Գառն...: — Զայս երգս ոչ եթէ հարկաւորապէս յամենայն աւուր ի լման պարտ է ասել... փոխել պարտ է զժամանակն... որչափ յամե (ոչ "կամի") ի ճաշակել...: Իսկ զԱ-րհնեցէ-ք ասել է պարտ... երկու կամ երիս" եւն: ||834 MA "երկիւղիւ" եւն: ||835 "ՔՀն. զկնի դայ կնքէ" եւն:*

Ապա սարկաւագն առնու զքաժակն նուիրաւքն, եւ դառնայ ի ժողովուրդն ասելով. Երկեղիւ եւ հաւատով յառաջ մատիք: — Քահանայն որ զկնի գայ՝ կնքէ զնոսա ասելով. Սեցո տէր զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս քո, հովուեա եւ բարձրացո յայսմ հետէ մինչեւ յաւիտեան: — Ժողովուրդն համբարձեալ զձեռս միաքան ասեն. Աւրհնեալ եկեալ անուամբ տեառն. Աստուած մեր երեւեցաւ մեզ:

Եւ հաղորդին արժանաւորքն: Յետ հաղորդութեան երգեն. Լցաք ի բարութեանց քոց տէր, ճաշակելով զմարմին քո եւ զարիւն. փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ: Որ հանապազ կերակրես զմեզ, առաքեա ի մեզ զհոգեւոր քո աւրհնութիւն, փառք ի բար·:

Եւ լուանայ քահանայն զձեռս. սարկաւագն՝ մինչ նոքա պաշտեն՝ խունկ արկանէ շուրջ զսեղանովն: Եւ առեալ զսպասն տանի ի սարկաւագատունն. եւ թէ եպիսկոպոս՝ ի սոյն ժամ դարձեալ զգենու զեմիփորոնն, եւ քարոզէ սարկաւագն արտաքոյ, եւ նա ասէ զաղաւթս Գոհանամք: — Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչեսցուք: — Եւ եւս հաւատով ընկալեալք յաստուածային սուրբ յանմահ խորհրդոյս, զտեառնէ գոհացարուք: — Քահանայն ընդ նմին ցած. Գոհանամք զքէն տէր, որ զայսպիսի ճաշակումն բարութեան շնորհեցեր մեզ ի փրկութիւն կենդանութեան. սովիմք պահեա զմեզ սուրբս եւ անարատս, բնակեալ զմեաւք քո աստուածային խնամովդ, հովուել զմեզ, եւ հանգուցանել յանդաստանի կամաց քոց սրբոց եւ բարեխիրաց. որով ամրացեալք յամենայն բանսարկուին ընդդիմութեանց՝ քում եւեթ եղիցուք արժանի լսել ձայնի, եւ քեզ միայնոյ քաջայաղթ եւ ճշմարիտ հովուիդ հետեւեալ, եւ առ ի քէն ընդունել զպատրաստեալ տեղի արքայութեան քո, Աստուած մեր

‖837—38 Այսպէս նաեւ MA, որ սակայն կ'ըսէ "Աստուած եւ Տէր երեւեցաւ" եւն: A մեր Սովորականին պէս՝ "Աստուած մեր եւ Տէր մեր երեւեցաւ մեզ. օրհնեալ եկեալ անուամբ Տեառն:" ‖839 MA "Յետ հաղորդութեանն" եւն: ‖841—42 MA "...առաքեա եւ այժմ զհոգեւոր քո զաւրհնութիւն. փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ:" A "առաքեա է մեզ... քո օրհնութիւն" եւն (= N): ‖843—46 MA "Եւ կէս սարկաւագն բերէ ջուր քահանային եւ լուանայ զձեռսն: Եւ սարկաւագն մինչ նոքա... ի սարկաւագարանն: Եւ թէ եպիսկոպոս է՝ դարձեալ զգենու զպատուակսն եմփորոնն... Գոհանամք զքէն Տէր որ զայս:" ‖847 MA Այլ. "Ժող. Տէր ողորմեա:" ‖848 A "...յաստուածային, ի սուրբ, յերկնային, յանմահ, յանարատ խորհրդոյս զՏեառնէ գոհացարուք:" MA տարբեր եւ լիակատար՝ "...յաստուածային, սուրբ եւ անմահ խորհրդոյս գոհանալով՝ զՏէր: Ընկալ կեցոյ եւ ողորմեա եւ պահեա զմեզ Տէր քոին շնորհիւդ: Զսրբուհի Աստուածածինն, զաւրհնեալ տիրուհին եւ զմիշտ կոյսն: Զժամս եւ զաւրս: Զհրեշտակ: Զքաւութիւն: Զսրբոյ խաչին: Եւ եւս միաբան: Զանձինս մեր: Ողորմեաց մեզ: ՔՀՆ. ընդ նմին ասէ ցած. Գոհանամք" եւն: ‖850 A "սովիմք պահեա" եւն: ‖851—52 MA եւ AN² արդի Պատարագամատուցին համեմատ՝ "Հովուեա (A զմեզ) յանդաստանի կամաց քոց սրբոց եւ բարեխիրաց" եւն: ‖853 A "... բանսարկուին ընդդիմութեանցդ՝ քումդ" եւն: ‖854 MA եւ AN² "...հովուիդ հետեւել... տեղի յարքայութեանդ (AN² արքայութեանդ) երկնից" եւն: Հոս կը կցէ MA "Է յոյն. Աստուած մեր եւ Տէր եւ

*եւ տէր մեր եւ փրկիչ Յիսուս Քրիստոս որ ես աւրհնեալ ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ։*

*Խաղաղութիւն ամենեցուն։* — Սարկաւագն. *Աստուծոյ երկրպագեսցուք։*

(Քհ.) *Անքննին անհաս երրեակ ինքնութեանդ, հաստիչ, անբաժին եւ անքակ տէրութեանդ սրբոյ Երրորդութեանդ, եւ միանական աստուածութեանդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ։*

ԻԳ.. — Ու երկրպագեալ համբուրէ զսեղանն, եւ իջեալ ի մէջ եկեղեցւոյն, ասէ զաղաւթս բարձրաձայն. *Որ աւրհնես զայնոսիկ՝ որ աւրհնեն զքեզ տէր, եւ սուրբ առնես զյուսացեալս ի քեզ. կեցո տէր զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս, զլրումն եկեղեցւոյ քո պահեա, սուրբ արա զնոսա՝ որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո.* (...) *եւ մի՛ թողուր զյուսացեալսք*

---

փրկիչ„ եւն։ ‖858 MA "Քհ. Խաղաղութիւն ամենեցուն։ Ժող. Եւ հոգւոյ քում։ Սրկ. Աստուծոյ երկրպագեսցուք։ Ժող. Առաջի քո Տէր։„ ‖859–61 MA տարբեր է յոյն. "Անքննին եւ անհաս էակ ինքնութիւն, հաստիչ, անբաժին եւ անքակ տէրութեամբ սրբոյ Երրորդութեանդ վայելէ փառք իշխանու.։ A ունի՝ "Անքննին անհաս էակ, ինքնութեան հաստիչ, անբաժին եւ անքակ տէրութեանդ, սրբոյ Երրորդութեանդ եւ միանական աստուածութեանդ վայելէ„ եւն։

ԻԳ. Ճիշդ հոս MA կցած է այն երկար աղօթքն ալ, որ նաեւ մեր Սովորական Պատարագամատոյցին մէջ մնած է եւ շատ անյարմար տեղ մը (հաղորդմանէն անմիջապէս յառաջ) բռնած, ուր սակայն հին ձեռագիրք չունին նոյնը։ Հոս տեղ կրնայ յարմարիլ. բայց թէ Լամբրոնացի գրած էր արդեւամբք այստեղ, խնդրական է, քանի որ չունի նոյնը ոչ N եւ ոչ N². եւ ոչ ալ Արճիշեցին ունի (տես էջ 518)։ MA այսպէս ունի աղօթքս. "Տեառն Յոհաննու Ոսկեբերանի ասացեալ։ Գոհանամ եւ մեծացուցանեմ եւ փառաւորեմ զքեզ Տէր Աստուած իմ. զի զիս զանարժանս արժանացուցեր յաւուր յայսմիկ հաղորդակից լինել աստուածային եւ սոսկալի խորհրդոցդ քո, անարատ մարմնոյդ եւ պատուական արեանդ։ Վասն այնորիկ զսոսա ի բարեխաւսութիւն ունելով՝ աղաչեմ, յամենայն աւուրս եւ ի ժամանակս կենաց իմոց, ընդ սրբութեամբդ քո պահեա զիս։ որպէս զի յիշելով զբարերարութիւնս քո, եւ կենդանի լինել ընդ քեզ, որ վասն մեր չարչարեցար եւ մեռար եւ յարեար։ Մի՛ մերձեսցի, Տէր իմ եւ Աստուած, խորտակիչն՝ կնքելով անձին իմոյ պատուական արեամբդ քո։ Ամենակարող, մաքրեա զիս ողջունք յամենայն մեռելոտի գործոց իմ. որ միայնդ ես անմեղ՝ ամրացոյ զկեանս իմ Տէր յամենայն փորձութենէ, եւ զպատերազմողն իմ դարձոյ յինէն յետս, պատկառեալ եւ ամաչեցեալ, որչափ յառնէ ի վերայ իմ։ Որ ես հզաւր աւգնական եւ պաշտպան իմ, ամրացոյ զգնացս մտաց եւ լեզուի իմոյ, եւ զամենայն ճանապարհս մարմնոյ իմոյ։ Լեր հանապազորդ ընդ իս, ըստ անսուտ խոստմանց քոց, թէ որ ուտէ զմարմին իմ եւ ըմպէ զարիւն իմ, նա յիս բնակեսցէ եւ ես ի նմա։ Դու ասացեր մարդասէր. կացոյ զբանս աստուածային անլուծանելի հրամանացդ։ Քանզի դու Աստուած ողորմութեան եւ գթութեան եւ մարդասիրութեան, եւ պարգեւիչ ամենայն բարեաց. եւ քեզ վայելէ փառք հանդերձ հարբ եւ ամենասուրբ Հոգւովդ. այժմ եւ միշտ։ Եւ իջեալ ի մէջ եկեղեցւոյն ասէ զաղաւթս զայս բարձրաձայն. Որ աւրհնես„ եւն։ ‖863–64 MA "...որ աւրհնեն զքեզ Տէր... զյուսացեալսն ի քեզ. կեցոյ զժողովուրդս քո„ եւն։ (N² = N "կեցո Տէր զժողովուրդս„ եւն. բայց A ալ չունի հոս "Տէր„ = MA)։ ‖865 N² "...զժառանգութիւն քո... սուրբ արա զսոսա„ եւն։ ‖866 MA "որք ողջունեն սիրով„ եւն. (AN² ալ "որք ողջունեցին։) — Փակագծի մէջ կէտերով նշանակուած տեղը յայտնապէս թերի է N, ուր

*ի քեզ։ Խաղաղութիւն պարգեւեա ամենայն աշխարհի, եկեղեցւոյ, քահանայից թագաւորաց քրիստոնէից, եւ զինուորեալ մանկանց նոցին. զի ամենայն տուրք եւ բարիք, եւ ամենայն պարգեւք կատարեալք ի վերուստ են իջեալ առ ի քէն՝ որ ես հայր լուսոյ, եւ քեզ [վայելէ] փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ։*

*Ժողովուրդքն ասեն միաբան. Եղիցի անուն տեառն աւրհնեալ յայսմհետէ մինչեւ յաւիտեան։ Եղիցի անուն տեառն։ Եղիցի անուն տեառն։ Երիցս ասեն։*

*Քահանայն դառնայ ի վերայ նոցա, եւ ասէ. Կատարումն աւրհնաց եւ մարգարէից դու ես Քրիստոս փրկիչ մեր՝ որ լցուցեր զամենայն հայրական տնաւրէնութիւնս քո. լցո զմեզ հոգւովդ քով սրբով։ — Ժողովուրդն. Ամէն։ Եւ սկսանին. Աւրհնեցից զտէր յամենայն ժամ։*

*Եւ կիսասարկաւագն նշխար բերէ առաջի քահանային, եւ նա աւրհնեալ բաշխէ ամենեցուն՝ մինչեւ ասեն զսաղմոսն Աւհնեցից զտէր յամենայն։ Ի տէր պարծեսցի։ Մեծ արարէք զտէր։ Խնդրեցի ի տեառնէ։ Մատիք առ տէր։ փառք հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ — Քահանայն կնքեալ արձակէ զժողովուրդն ասելով. Աւրհնեալ եղերուք ի շնորհաց սուրբ Հոգւոյն, երթայք խաղաղութեամբ, եւ տէր եղիցի ընդ ամենեսեան։ — Ժողովուրդն. Ամէն։*

---

ըլլալու է (ըստ MA եւ AN² եւ յունարէնին) "Դու ընդ քաղաքորեա աստուածային զաւրութեամբ (A զօրութեամբդ) քո" ունի։ — A "Եւ մի թողուր զյուսացեալս ի քեզ. զխաղաղութիւն" ունի։ ‖867ff MA եւ AN² "...պարգեւեա ամենայն աշխարհի (N² պարգ. աշխ.), եկեղեցեաց, քահանայից, թագաւորաց մերոց եւ զինուորեալ մանկանց նոցա, եւ ամենայն ժողովրդեանս. զի ամենայն տուրք բարիք" ունի։ ‖869 A "պարգեւք կատարեալ" ունի։ — AN² "...ի վերուստ ի քէն են իջեալ" ունի։ ‖870 MA եւ AN² "Զի քեզ վայելէ փառք" ունի։ ‖871—72 MA "Ժողովուրդն միաբան ասեն. Եղիցի" ունի. (MA երեք անգամն ալ առաջին տողին պէս լիակատար կրկնած է։) — MA եւ A չունին "Երիցս ասեն։" ‖873 MA "Իսկ քհն. դարձեալ ելանէ ի բեմն, եւ երկրպագեալ համբուրէ զսեղանն. դառնայ ի վերայ ժողովրդեանն խաչակնքէ եւ ասէ՝ Կատարումն" ունի։ ‖875 "Հայրական" ունին նաեւ MA եւ A. իսկ N² "Հայրական։" — MA (եւ N²) միայն "տնաւրէնութիւնս," իսկ A "տնօրէնութիւնս քո" (= N.) — MA եւ AN² "Հոգւովդ քո սրբով։" ‖876 MA "...յամենայն ժամ. զխօսին է բառն փառն առ փառն։" ‖877—82 MA "Իսկ կէս սարկաւագն ... եւ նա աւրհնէ եւ բաշխէ ամենեցուն՝ մինչդեռ ասի սաղմոսն։ Եւ ի կատարմամն սաղմոսին եւ բաշխմանն՝ քահանայն սուրբ կնքեալ արձակէ զժողովուրդն ասելով. Աւրհնեալ եղերուք" ունի։ Ուստի MA չունի խորատագրի այն մասն առ N, որ կ'ապացրէ ըսել "Ի Տէր պարծեսցի։ Մեծ արարէք զՏէր. Խնդրեցի ի Տեառնէ. Մատիք առ Տէր. Փառք Հաւր" ունի։ Սակայն նոյնն ունի նաեւ N², ուր կայ գլուխ մը (էջ 506—16) "Մեկնութիւն Սաղմոսի արշնութեան, զոր ասեն է բաշխելն ասեն. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ...։ Ի Տէր պարծեսցի անձն իմ" ունի։ ‖882 MA ալ կ'աւարտի այսպէս՝ "Ժողովուրդն. Ամէն։" Բայց ասկէ ետքը կայ փոքրիկ յիշատակարանս ալ՝ "Փառք Աստուծոյ շնորհողին մեզ զայս պարգեւ։ Աղաչեմ զձեզ ով սուրբ մանկունք եկեղեցւոյ, յիշել զԶաքարիա անարժան կրաւնաւոր ի Քրիստոս Աստուած մեր։" Զաքարիա դրչին մասին տես վերն էջ 85—87։

## Յ.

### Ըստ Հասարակ Օրինակին:

*Նախընթաց երկու պատարագի ձեւերը — Վատիկանեանն ու Լամբրոնեանը — թէպէտ ուղղակի չեն վերաբերիր երկասիրութեանս բուն նպատակին, որ է՝ ցայսօր մեզի գրեթէ բոլորովին անծանօթ մնացած մեր հայերէն հին Խորհրդատետրերը միայն հետազօտել, երեւան հանել եւ անոնց յարգն ու արժէքը կշռել. սակայն թէ՛ զատոնք առջիններուն հետ համեմատելու եւ թէ՛ մեր պատարագին դարուց ի դարս առած այլեւայլ կերպարանքն ամբողջ ցուցնելու համար՝ անուղղակի կարեւոր կրնան համարուիլ նոյն նպատակին: Սոյն պատճառաւ եւ ղովլին վախճանաւ աւելորդ պիտի չըլլայ, կարծենք, նաեւ մեր այսօրուան Հասարակ պատարագն առջեւնիս ունենալ՝ Հեղինակին երկասիրութենէն պակսած աս կտորը լրացընելով, որով մեր պատարագին պատմութիւնը կամ թէ ըսենք ժամանակագրութիւնն անընդհատ հիւսուած կ՚ըլլայ ի սկզբանէ մինչեւ ցայսօր:

Արդ ահաւասիկ պատարագի ան ձեւը՝ որ բաւական դարերէ ի վեր ընդհանուր Հայ ազգին ձեռքն է. ուստի եւ անոր համար Հասարակ Օրինակ կամ Ընթերցուած անուանեցինք եւ յընթացս երկասիրութեանս յաճախ յիշատակուած տեսանք:

Ասոր — գէթ ըստ մեծի մասին — հնութիւնը մեր ոչ շատ հին ազգայինք մինչեւ ոսկեդարու ժամանակներ կը հանեն պէս պէս ուշակալութեամբ (tendance). այլ առանց հիման՝ ինչպէս ցայս վայր ըստ բաւականին, կարծենք, ցուցուեցաւ:

Սոյն այս Հասարակ Օրինակը կամ Ընթերցուածը Հայ ազգին իբրեւ միակ Խորհրդատետր համարուած էր ցայսօր մերիններուն շատերէն: Այլ թէ որչափ անհիմն է աս համարումը՝ մինչեւ հիմայ ըսուածներէն արեւու լուսոյն պէս յայտնի կ՚երեւայ: Ասոր համար ամենեւին զարմանք չէ որ՝ երկու դար կայ՝ օտարազգիք ալ, մեզմէ առնելով, աս սանկ միակ պատարագ համարած — թէեւ ոչ միշտ լիովին համոզուելով — եւ սանկ ալ այլեւայլ եւրոպական լեզուաց թարգմանած են եւ ըստ այնմ գործածած եւ հետազօտած: Սակայն աս անտարակուսելի էր որ սոյն այս Հասարակ ըսուած Ընթերցուածը՝ երկայն դարեր՝ ազգին մէջ պահուած է ամբողջ եւ անայլայլակ,** եթէ միայն քանի մը կէտ՝ թէեւ ծանրակշիռ՝ ի բաց առնունք:

Հասարակ Օրինակը կամ այսօրուան Խորհրդատետրն ուրիշ բան չէ՝ բայց եթէ մեր Ն. պատարագը (յանուն Աթանասի) ըստ գոյացութեան՝ ինչ ինչ աւելցընելով կամ պակսեցընելով կամ փոփոխելով եղանակաւորուած. իսկ Ն. պատարագին Օրինակներէն մէկը Խոսրովեանն է:

---

* Այս փոքրիկ յառաջաբանական կտորը Խմբագրէն է (Հ. Քերովբէ Վ. Սպենեան), որուն այս գրքիս համար ունեցած խնամոց մասին տես գործքիս սկիզբը դրուած Ազդը: ՀՐՏՐ.:

** Միշտ խօսելով միայն վերջին երկու երեք դարերուն համար կրնայ ըսուիլ այս բանս: Տես յաջորդները: ՀՐՏՐ.:

*Ընդհանրապէս սա կը դիտուի որ Խոսրովեան Օրինակը չունի Հասարակ Օրինակին ունեցած Սկիզբը՝ «Օրէնք արկանելոյ սպաս եկեղեցւոյ...» մինչեւ «Քարոզ· Եւ եւս հաւատով...»։ Անկէ միայն կ'սկսի իւր Խորհրդամատոյցը։*

*Իսկ Վատ· եւ Լամբր· Օրինակները ունին «Օրէնք արկանելոյ սպաս եկեղեցւոյ...: Օգնեա փառաւորութեան,» իւր սարքը։ Սակայն չունին երկուքն ալ Հասարակ Օրինակին ունեցած միւս Յաւելուածները՝ ոչ «Լուացայց ողորմութեամբ» եւն եւ «Պսակ արա» եւն· — ոչ՝ «Խորհուրդ խորին» սաղմ, — ոչ «Եւ վասն ողորմութեան... Մաքուր վերափառաբանեալ...» «Ընկալ Տէր» եւն· — ոչ՝ «Խոստովանիմ...» «Աղօթեսցէ...» «Աղաւթեսցէ» եւն· — ոչ՝ «Յիշեսցուք... Յիշեսցուք» եւն։ — ոչ՝ «Սրբ· Պետ· Աղաչեսցէ», եւն· — ոչ՝ «Քարոզ· Եւ եւս խաղաղ·։ Օրհնեցաւ զհոգի Տեառն մերոյ» եւ կից «Ասէ· Ի յորժամ ողորմութեան։» Նոյնպէս չունի Վատ· Օրինակն Նախկոսին աղօթքը՝ «Ընծայել Աստուած ճշմարիտ·» եւ դարձեալ «Աղաչեմ ես աղերսեմ» եւն։ Բայց Լամբր· Օրինակը զանիկայ ունի։ — Առ հասարակ Հասարակը խառնուրդ է Խոսրովայ եւ Լամբրոնացւոյ· դարձեալ հնոյն եւ նորոյն երեւեցուցիչ է։ Ուրիշ մանաւոր տարբերութիւններն իւրաքանչիւր տեղերը զատ զատ կը նշանակենք։*

---

## Ա.

## ԼԻՄՆԵԱՆ ԵՒ ԿԻԼԻԿԵԱՆ ՕՐԻՆԱԿ, ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ՈՒՐԻՇ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՔ*

*Թերակատար կ'ըլլար երկասիրութիւնս եւ Հայոց Խորհրդամատուցաց Պատմութեան երկար շղթան մեծապէս կ'ընդհատէր, եթէ չաւարտէր գործս արդի Պատարագամատոյցին հրատարակութեամբը՝ մեր ձեռքն եղած ամէն գլխաւոր ձեռագիր եւ տպագիր աղբիւրներն աւելի լաւ գործածելով քան մինչեւ ցայսօր եղածները։ Պատարագամատոյցը շատ անգամ լոյս տեսած է· բայց ամէն անգամ ալ պարզ գործածութեան համար· ուստի իւր վերջին կամ արդի ձեւով, որ ստուգիւ միօրինակ է՝ քանի մը կէտեր չհաշուելով։ Գիտական արժէք չունին ատոնց մեծագոյն մասն նաեւ անով որ անկախ չեն, այլ իրարմէ տպագրուած։ Բոլոր տպագիրները քննելով կը տեսնուի որ ատոնք շատ շատ երկու ձեռագրի ներկայացուցիչն են, մէկ մեծ մասն «ըստ օրինակին տպելոյ ի Հռոմ», միւս մասն ալ այնպիսի ձեռագրէ մ'ըլլալով, որ առջինէն աննշան տարբերութիւններ ունէր։ Նոյն իսկ Եւրոպական բազմաթիւ թարգմանութիւնք մեր պատարագին աւելի հաստատուն կռուան մը չունին· ամէնն ալ եղած են այս կամ այն տպագրութեան վրայէն, որով միշտ միեւնոյն բնագիրը հիմն ունին։*

*Այս եղած է պատճառն որ առհասարակ տարածուած է այն կարծիքը թէ Հայոց պատարագը միակ է եւ անփոփոխ՝ նոյնպէս դարերէ ի վեր գործածուած։ Տեսանք այս կարծեաց որչափ սխալ ըլլալը։ Անփոփոխ միօրինակութիւն յայսմ՝ ճշգիւ խօսելով՝ միայն տպագրութեամբ տիրած է Հայոց մէջ· ինչպէս որ նոյնը ոչ նուազ նաեւ ուրիշ եկեղեցական գրոց համար ալ կ'արժէ։ Միայն ընդհանուր միօրինակութիւն մը կրնանք ընդունիլ ԺԳ· դարէն սկսեալ, այն ալ տակաւին շատ չափաւոր աստիճանաւ։ Մեր Հինգերորդ (կամ Աթանասեան) Պա-*

---

* Այս մասն ալ մեզմէ է, ինչպէս նաեւ մեր Սովորական պատարագին հրատարակութիւնը համեմատութեամբ իբր 50 կտոր ձեռագիր եւ տպագիր օրինակներու, որուն մասին տես նաեւ յետոյ։ ՀՐՏՐ.:

*տարազէն մինչեւ Համբրոնացի եւ անկէ քիչ մ՚եաքն ալ երկար շղթայ մը տեսանք այս միեւնոյն պատարագին բազմաթիւ կերպարանափոխութեանց: Կրնար կարծուիլ որ Համբրոնացւոյ Պատարագամատուցով դադար առած ըլլային այս փոփոխմունք: Բայց այնպէս եղած չէ: Պարզ համեմատութիւն մը մեր Սոփորականին եւ Համբրոնեան բնագրին կը ցուցընէ որ տակաւին բաւական մեծ անջրպետ կայ երկուքին մէջ: Եթէ էական մասերը քիչ շատ նոյն մնացած են, մանրամասնութիւնք շատ ու շատ կը տարբերին իրարմէ. նոյն աղօթքներն անգամ յաճախ տարբեր խմբագրութիւն եւ ուրիշ դարձուածներ ունենալով մեկուն կամ միւսին մէջ:*

*Թէ երբ առած է արդի Խորհրդատետրին [illegible] մէջ իւր վերջին ձեւը՝ բաւական դժուար է այժմ ըսել: Պատասխանը կրնան տալ միայն հին ձեռագիրները, որոնք դժբախտաբար շատ բազմաթիւ չեն, որչափ կրնար կարծուիլ: Ամենամեծ մասը եւ այն հարիւրներով՝ գլխաւորաբար Ժամագրոց մէջ՝ ԺԶ եւ նաեւ ԺԷ դարերուն գրուած է. բաւական թուով կան ԺԵ դարէն ալ. իսկ քիչ մեր խնդրոյ համար կարեւոր ԺԳ—ԺԴ եւ աւելի նուազ կանխագոյն դարերէն: Էջմիածնի հազարաւոր ձեռագրաց մէջ 16 Ժամագիրք կը հաշուէ Կարինեանցի ցուցակը*[1]*, գրեթէ ամէնն ալ ԺԷ դարէն, ուստի մեր խնդրոյ համար աննշան: Բացի անթուականներէն — որոնցմէ ոմանք կրնան ցանկալի հնութիւնն եւ արժէք ունենալ, բայց տեղեկութիւն չունինք ցուցակէն, — կը մնան միայն երկու կտոր. մին բոլորգիր (Թ. 545) Ղրիմ գրուած "ՊԺԱ" (= 1352) թուին՝ բայց կ'երեւայ առանց Պատարագամատուցի, միւսը (Թ. 546) նոյնպէս բոլորգիր՝ Գողթնեաց գաւառը գրուած ՊԼԳ (= 1384) թուականին: Աւելի աննպաստ է նոյն ցուցակին "Խորհրդատետր" բաժինը*[2]*, ուր 20 ձեռագրաց 14 հատն որոշ թուականաւ ԺԷ եւ ԺԸ դարերէն է, մնացեալներն անթիւ՝ որոնց մասին տեղեկութիւն չունինք*[3]*: Երուսաղէմայ գրատան հազարաւոր ձեռագրաց մասին դժբախտաբար ծանօթութիւն չունինք. հոն անշուշտ կարելի պիտի ըլլայ հնագոյն եւ յարգի ձեռագիրներ գտնել արդի Խորհրդատետրին: Նոյն իսկ Վենետիկոյ 13 Խորհրդամատոյցներն եւ 24 Ժամագիրքները (— առջեւս եղած ձեռագիր ցուցակի մը համաձայն, բայց կրնան ուրիշ հնագոյնք ալ յետոյ հոն հաւաքուած ըլլալ, —) շատ հնութիւն չունին. մեծագոյն մասն՝ անթուականքը դուրս հանելով՝ ԺԷ—ԺԸ դարերէն են: Շատ յարգի է սակայն բոլորգիր "Ժամագիրք ԻԲ" (Թ. 1411) որ ՉԼԳ (= 1284) թուին գրուած է, որուն ներքնոյն մասին դժբախտաբար տեղեկութիւն չունիմ. նոյնպէս "Ժամագիրք Զ" բոլորգիր ՊԾԷ (= 1408) թուին: Ասկէ զատ կան քանի մը հատ ալ ԺԶ դարէն*[4]*, որ*

---

[1] "Մայր ցուցակ." տպ. Տփ. 1863, էջ 53—55 (Թ. 534—549.)

[2] Անդ, էջ 42—43 (Թ. 683—703:)

[3] Անշուշտ բաւական հնութիւն ունենալու է օրինակի համար Թ. 702, ուր կայ նաեւ "Խորհուրդ պատարագի նախատօրինակութեանց յաւուրս չարչարչարանաց եւ ուրբաթ աղուհացից" եւն: Նոր հաւաքեալ ձեռագրաց մէջ ալ տեղաց են նոր գրութիւնք, այսպէս Թ. 79—85 ձեռագիր ցանկին Գէորգայ կթղ. հաւաքման, ամէնն ալ ԺԷ—Ը դարերէն, եւն:

[4] Այսպէս "Ժամագիրք Գ" նօտրգիր (ՌԽԷ = 1598.) "Ժամ. Ե" բոլորգիր (ՌԵ = 1556.) "Ժամ. Ը" բոլորգիր (ՌԼ = 1581.) "Ժամ. Ժ" բոլորգիր (ՌԽԷ = 1598:) Շատ բազմաթիւ են ԺԷ դարէն եղածներն. այսպէս "Ժամ. Ա" նօտրգիր (ՌՁԵ = 1636). "Ժամ. ԻԴ" բոլորգիր (ՌՁԶ = 1637) եւն: Բայց ասոր ժամագրոց ոմանք կրնան պարզ կարգ գրութեան մ'ունենալ՝ առանց լիակատար Պատարագամատուցի:

*նոյնպէս արժէք կրնան ունենալ։ Փարիզի ընտիր հաւաքման մէջ ալ հնագոյն Խորհրդատետրներ չեմ գտներ, գոնէ որոշ թուականաւ եղածներուն մէջ[1], նոյն հաւաքման տպաւոր ձեռագիր ցուցակին համեմատ։ Աւելորդ կը համարիմ յիշել ուրիշ մանր հաւաքմանց մէջ եղածներն. որչափ ինծի ծանօթ են՝ մեծագոյն մասամբ ԺԷ դարուն եւ անկէ ետքը գրուած են ասոնք։ Ընդհանրապէս քանի որ մեծ ու փոքր հաւաքմունք՝ ինչպէս որ պէտք է՝ ամփոփուած եւ ցուցակագրուած չեն, այս կարգի հետախուզութիւնք միայն շատ թերակատար կրնան ըլլալ։*

*Գալով առձեռն ունեցած ձեռագրացս եւ ընդօրինակութեանցս՝* 15 *հատ են թուով լիակատար Խորհրդատետրներն, բաց ի Լիոնեան եւ Մոնաքոնեան օրինակներէն՝ ամէնն ալ մեր գրատան մէջ, (հինգը ԺԴ—ԺԶ դարերէն.) եւ բաց ի անոնցմէ՝ որ Լեհահայոց Խորհրդատետր, Կարգ դպրութեան, Մանրուսմունք եւն են, ուստի միայն մասամբ մեր բնագրի համեմատութեան համար կրնան գործածուիլ։ Ասոնք բաւական են՝ ընդհանրապէս խօսելով՝ ցուցընելու մեր պատարագի որպիսութիւնն ԺԳ դարէն ետքը մինչեւ տպագրութեանց սկիզբն. վասն զի ամէն դարէ ալ կան օրինակներ։ Ծանօթ է որ ԺԳ դարուն կամ* 1289*ի է Մոնաքոնեանին Պատարագաց հաւաքումը*[2]*. յաջորդ դարու սկիզբէն է ծանօթ Լիոնեանը՝* 1313*ին գրուած. մերձաւորապէս ԺԴ—ԺԵ դարէն է (նաեւ ըստ ներքին հանգամանաց, ինչպէս պիտի տեսնենք) մեր գրատան Թ.* 544 *օրինակը։ ԺԵ դարէն կան՝ Թ.* 428 (*գրուած ՊՀԶ* = 1427 *թուին*) *եւ նոր հասած ձեռագիր մը Տզմնց անապատի ՋԻԳ* (= 1474) *թուին, բայց հնագոյն կիլիկեան գաղափարէ մը եւ շատ հետաքրքրական բովանդակութեամբ. ասոր կը կցի նոյնպէս նոր հասած օրինակն ՋԿԱ* (= 1512) *թուական ի Մոկս գրուած, եւ Թ.* 196 (*գրուած ՌԽԲ* = 1593)*։ Չեմ յիշեր ԺԷ դարէն եղածները, զոր օրինակ Թ.* 333 (*ՌԿԷ* = 1618,) *Թ.* 195 (*ՌՀԷ* = 1628) *եւ ուրիշներ։ Տես նաեւ յաջորդ բնագրին համեմատութիւնքն եւ անոր սկիզբը գրուած համառօտութեանց ցուցակը ձեռագիր եւ տպագիր օրինակաց։*

---

[1] Այսպէս Cod. Arm. 24 գրուած Ստեփ. Բջնեցիէն ՌՃԴ (= 1655) թուին. Cod. Arm. 43 յիշատակաւ գրուած Սիմէոն կրօնաւորէ ՌԾԴ (= 1605) թուին. Cod. Arm. 100 նօտրգիր իբր ԺԷ դարէն. Cod. Arm. Suppl. 12 bis (Մարտէն Թ. 38։ Տէր-Մովսիսեան՝ Թ. 151) մագաղաթեայ բոլորգիր, գեղեցիկ զարդերով եւ նկարներով, բայց ՌՃՀԸ (= 1729) թուին գրուած Պետրոս եպիսկոպոսէն. Cod. Arm. Suppl. 131 մգլթ. բոլորգիր՝ Իշխանծին գրուած Թադէոս դպրապետէն ՌՃԴ (= 1655) թուականին։ Բաց աստի կայ՝ Cod. Arm. Suppl. 50, որ նոր ընդօրինակութիւն է՝ Դիւլորիէ հայագէտէն հոգացուած՝ յաճախ յիշուած Լիոնեան օրինակին։ Յիշելու է նաեւ Cod. Arm. Suppl. 72 "Խորհրդատետր սուրբ պատարագի ազգին Հայոց։ Սորա օրինակն բաղդատեալ եւ օրինաւորեալ ի գերագահ սուրբ աթոռն ի Հռոմ, հաւանութեամբ եւ հաճութեամբ սրբազան փափին ԺԱերորդ տեառն Կլեմենթէոսի. եւ ես անարժան ծառայ Քրիստոսի Աւետիք Վրդ. զնոյն յօրինակէն գրեցի ի մայրաքաղաքն Փարէզ, հրամանաւ սուրբ գարտինալ արհիեպիսկոպոսին Փարիզու ի թվին 1710։" — Մանրուսմունքներ՝ ուստի նաեւ Պատարագի պըլ-եւայլ մասեր (Ժամամուտք, Սրբասացութիւնք եւն) ուրիշ հին թուականաւ կան Փարիզ ալ. այսպէս՝ Cod. Arm. 33 գրուած "ի գաւառս Գառնոյ ի յանապատս Մանուէլի, որ է ի սիրտ լերինս Այրիվանուց", ՊՀԸ (= 1429) թուին Գրիգոր վարդապետէն. Cod. Arm. 40 անթուական՝ ԺԷ դարէն յառաջ. Cod. Arm. 49 բոլորգիր իբր ԺԷ դարէն։ Հմմտ. նաեւ Cod. Arm. Suppl. 130 խազգիրք զարդարուն եւ նկարներով ՊՀԷ (= 1428) թուին գրուած Քրիստոսատուր կրօնաւորէն ի Կաֆա։

[2] Սակայն կարելի եւ հաւանականագոյն է ըսել թէ նոր պատարագը վերջին գրչէն ըլլայ եւ ոչ իւր առջեւն եղած հաւաքմանէն առնուած. այն ատեն ԺԵ դարուն կ'իյնայ. (վերջին գրութիւնն եղած է 1427-32ին։) Տես նաեւ յետոյ։

*Համեմատելով զասոնք՝ արդէն բաւական լոյս կը սփռէ մեր պատարագի այլեւայլ ժամանակներն առած փոքր ու մեծ եղանակաւորմանց վրայ։ Հնագոյնները նախ շատ պէսպիսութիւն ունին բովանդակ պատարագի ներքին մասանց որքանութեան, կարգին եւ մանաւանդ խրատագրոց մասին։ Գլխաւորաբար պատարագին սկիզբն (մինչեւ գրեթէ ձեռաց լուացումն) եւ վերջը (վերացուցմանէն կամ յիշատակաց աւարտելէն մինչեւ կատարումն) տակաւին անհաստատ կազմութեամբ կը գտնենք անոնց քով. Մնացեալ մասերն ընդհանրապէս հաստատուն եւ միակերպ են։ Վերջին աւետարանը տակաւին ոչ միայն հնոց, այլ նաեւ ԺԷ—ԺԸ դարերու ձեռագրաց անծանօթ է՝ ընդհանրապէս խօսելով. չենք սխալիր եթէ անոր առհասարակ մուտք գտնելը տպագրութեանց միջոցաւ միայն եղած համարինք. (տես համեմատութիւնքն նոյն տեղւոյ։) Այս ընդհանուր ակնարկէս ետքը՝ պէտք է հոս քանի մը խօսք ըսել հնագոյններու եւ անոնց ներքնոյն մասին։ Անոնց քով այնպէս մեծ շեղումներ եւ տարբերութիւններ կան աղօթից կարգին, որ ստիպուած ենք հոս անոնց պատարագի կմախքը հանել ու դնել։ Ասի կարեւոր էր նախ անոր համար, որ ասով մինակ կարելի էր այն պատարագաց որպիսութիւնն որոշ տեսնել, մինչդեռ յաջորդ բնագրի չափազանց շատ ու բազմակերպ ծանօթութեանց կամ համեմատութեանց մէջ դժուար եւ գրեթէ անկարելի է իրարու հետ բերել կցել միեւնոյն ձեռագրին յաճախ տարանջատ դրուած մասերը եւ ասով անոր ամբողջութեան վրայ գաղափար ունենալ։ Երկրորդ նաեւ այն կողմանէ օգտակար է այս, որ ասով յիշեալ համեմատութիւնք եւ ծանօթութիւնք կը թեթեւնան, ինքնին ծանօթ ըլլալով որ հոս առանձինն դրուած կտորներն հոն կրկին չենք զետեղեր, այլ միայն կ՚ակնարկենք եւ կոչում կ՚ընենք։ — Այժմ անցնինք իւրաքանչիւր ձեռագրաց ներքնոյն մասին խօսելու։*

1. *Լիոնեան Օրինակ։ Ամենէն յառաջ պէտք է անշուշտ դիտել թէ ինչ հանգամանք ունի յաճախ յիշուած Լիոնեան օրինակին "Աթանասիու Պատրիարքին„ խորհրդամատոյցը, որ նոյն ձեռագիր հաւաքման առաջին կտորն է*[1]*։ Կարեւոր է այս բանս ոչ միայն այն պատճառաւ որ* 1315*ին գրուած ըլլալով ձեռագիրը, մեր Պատարագին հնագոյն վկայից մին է, այլ նաեւ անոր համար որ միւս ձեռագիրներէն աւելի շատ տեղ Լամբրոնեան Պատարագին կը համընթանայ քան մեր Սովորականին, նաեւ առաջնոյն յատուկ կտորներու մէջ։ Դժբախտաբար չունիմ այժմ առձեռն այս ձեռագրիս Խորհրդամատոյցը լիակատար, այլ միայն բաւական երկար քաղուածք մ՚այն ամէն մասերուն, ուր Լիոնեանը շեղում կը ցուցընէ։ Այս պարագայիս մէջ, որովհետեւ դժուար էր ձեռագրիս գլխաւորաբար աղօթից ընթերցուածոց էական տարբերութիւնքն նշանակել մեր Սովորականին հրատարակութեան ներքեւ զետեղուած համեմատութեանց կամ ծանօթութեանց մէջ, աւելորդ չենք համարիր դնել հոս լիակատար այն քաղուածքները եւ խրատագիրներն՝ զոր գտանք Հ. Ցովսէփայ Վ. Գաթրճեանի թղթերուն մէջ։ Այս քաղուածքներն աչքէ անցընելով եւ համեմատելով մեր Սովորական Պատարագին ընթերցուածոց հետ՝ կրնանք Լիոնեանի* (L) *ձեռագրի ամէն կարեւոր տարբերութիւնները տեսնել։ Որչափ ալ բաղձալի ըլլար մեզ քանի մը տեղ աւելի ընդարձակ յառաջ բերուած տեսնել, չենք կարծեր որ կարեւոր բան մը զանց առնուած ըլլայ։*

---

[1] Ձեռագրին մասին տես վերն էջ 81—84, | Պատարագս է այն տեղւոյ § 1. (էջ 82։)

սիրով... Վերոյոյնե ԺՀ. Զի քո է կարողութիւն, եւն: — Փոխոյոյն ասղմոս. Տէր Թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ, եւն[7]: Բարեխօսութեամբ, եւն: (Ժմմր.) Միածին Որդի... եւ անմահ էութիւն... ի միշտ կուսէն անփոփոխելի: Մարդ եղեալ...: Սրկ. Ընկալ կեցո եւ ող.: Զամենասրբուհի: Եւ եւս խաղ.: Զանձինս: Ողորմեաց: — ՔՀ. Որ հասարակաց զայս... Ի յոյն. Զի բարերար եւ մարդասէր ես Աստուած եւ քեզ վայելէ փառք, եւն: — (Սղմ.) Եկայք ցնծասցուք ի Տէր...: կանխեսցուք առաջի: Կիրակէն. Կեցո զմեզ Որդի Աստուծոյ, որ սքանչելիդ ես ի վերայ սրբոց քոց, ալէլու: Նորա է ծով: Կեցո զ.: Փառք: Կեցոյ: Սրկ. Պռաւօխումէ: ՔՀՆ. Երչերղ–քե Երէգո Ե– հա–մբա–րէ ղ–ւ–եփարանն: Եկայք երկիր պագցուք: Նա ինքն է Տէր: Կեցո զմեզ Որդի: Այսօր եթէ: Զանազան: Կեցո զմեզ: Փառք Հօր: Կեցո զմեզ:

(ՔՀ.) Տէր Աստուած մեր որ կարգեցեր յերկինս դասս եւ զինուորութիւնս հրեշտակաց... այժմ եւն: Զի քո է կարողութիւն, եւն:

Ե– օչ–անէն շարակ–ն ե– մ–անէն ի խ–րանն, Երչերղ–քե Ե– ս–րչ–ա–ճն, –այ զխ––նքն Ե– ԺՀՆ. Տէր մեր օրհնեա † զխունկս † զայս, եւ ընկալ ի հոտ անուշից, շնորհօք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:[8] Ե– ծիւէ ս––րէ օեղ–նոյն: — Սրկ. Պռաւուխ.: Ե– ը–ր Բ–նէն Բ–րյր–ց––ց–նէ ղ––եփ.: Ժող. Սուրբ Աստուած, Սուրբ եւ հզօր, Սուրբ եւ անմահ: ՔՀ. Աստուած սուրբ որ ի սուրբս բնակեալ ես եւ երեքսրբեան...: Ի յոյն. Զի սուրբ ես Աստուած մեր եւ քեզ զերեքսրբեան օրհնութիւնս մատուցանեմք Հօր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն, այժմ:

[Սրկ. Առասցուք: Ցամենայն անձնէ: Վասն սրբոյ տաճարիս, եւն եւն:[9]] ՔՀ. Բ–ղ–նէն–փ–րւոծ, Տէր Աստուած մեր զբազկատարած զաղաչանս...: Ի յոյն. Զի ողորմած եւ մարդասէր ես Աստուած եւ քեզ, եւն:

Երչերղ–քէն Երէգո Ե– հ–մբ––րէն ղ–ե–ղ–նն Ե– գ–ն յ––փ–ճ–նն: Սրկ. Օրհնեա Տէր զաստիճանս զայս:[10] ՔՀ. ասէ. Օրհնեալ ես Թագաւոր անմահ երկնաւոր, որ նստիս յաթոռ փառաց, սուրբ Երրորդութիւն, փառաւորեալ այժմ եւ միշտ եւ յաւիտ.:

Ե– Բ–ղ–ի ե– ֆղէր– ա–ե ղ–ղմ–ն ե–չ–րտ–յ ղ–––ե–ղն ե– ա–ե ոլէլ–ն: Սրկ. Էռչէ. Որթիւ: ՔՀ. Խաղ. ընդ ամեն.: Ժող. Եւ ընդ հ.: Սրկ. Երկիւղածութեամբ լուարուք սրբոյ աւետարանին: Ժող. Փառք քեզ Տէր Աստուած մեր: Սրկ. Պռօսխումէն: Ժող. Պռօսութէաւս: Ե– ըն–եղ–ն––ն ղ––եփ–ր–նն, Ե–օչ––նէն.[11] Հաւատամք մի Աստուած... արարող...: Եւ մի Տէր Յիսուս Քրիստոս... այսինքն յէութենէ Հօր (փխ. "նախ քան զյաւ.")... նոյնէնութեամբ Հօր (փխ. "համագոյակից Հօր")... ճշմարտապէս եւ ոչ կարծիս ունելով. այսինքն չարչարեալ, խաչեալ ի Պոնտացւոյ Պիղատոսէ, թաղեալ, յերրորդ աւուր յարուցեալ ըստ գրոց... որոյ սուրբ եւ անմահ թագաւորութեանն ոչ գոյ վախճանն: Եւ ի սուրբ Հոգին յանեղն եւ ի կատարեալն ի Տէրն եւ ի կենդանարարն, որ ի Հօրէ ելանէ եւ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ երկրպագակից է եւ փառակից, որ խօսեցաւ յօրէնս եւ ի մարգարէս եւ ի սուրբ աւետարանս... քարոզեաց զառաքեալն եւ բնակէ ի սուրբսն: Եւ ի մի կաթուղիկէ առաքելական եկեղ... մի մկրտութիւն ապաշխարութեամբ թողութիւն մեղաց...: Իսկ որ ասեն... զայնպիսիս ատացողքն նզովէ...: Իսկ մեք փառաւորեսցուք... երկիր պագանելով սուրբ Երրորդութեանն Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն:

Սրկ. Եւ եւս խաղ.: Եւ եւս հաւատով...: Զժամ պատարագիս, եւն:

---

[7] Նշանը կը նշանակէ թէ L ձեռագիրը Սաղմոսը լիակատար օրինակած է հոս:

[8] Խնկի օրհնութեան կարգը Լատինացւոց Պատարագէն մտած է հոս ի L, բայց ոչ Լամբրոնացւոյ եւ ոչ Սովորականին քով կայ: Լատինացւոց "Աղօթք խնկին" տես վերն էջ՝ 458:

[9] Մենք դրինք փակագծերը՝ Լամբրոնեան Պատարագին համեմատ (տես էջ 531—2:) Վ. Հ. Ցովսէփ հոս նշանակած էր թէ "ասկէ ետքը Սրկ. երկար Լիթանիա մը" կամ Խաղաղականք կ'ըսէ առ L.

[10] Համմտ. Լամբրոնեանը՝ վերն էջ 532. սակայն նաեւ հոն չկայ քահանային յաջորդ "Օրհնեալ ես Թագւր." եւն աղօթքը, որ Լի յատուկ է:

[11] Հանգանակիս շատ մասերն՝ որ արդի տպագրեալ սովորական ձեւէն կը խոտորին, ոչ միայն Լամբրոնեանի՝ (տես էջ 535—6) այլ նաեւ մեր արդի Պատարագի հին ձեռագրաց ընթերցուածոց համեմատ են: Բայց ասոնց մէջ չկան, ուստի Լի յատուկ են՝ "որ ի Հօրէ ելանէ" եւ ատոր կից խօսքերը, համաձայն ըլլալով հնագոյն հանգանակաց.

(Քհն.) Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս որ մեծդ ես ողորմութեամբ...։ Զի արժանաւորք եղիցուք փառաւորել, եւն։ Խղղ. ընդ ամենես.։ Սր. Աստուծոյ երկրպ.։ Դպ. Ընդ հոգ.։ (Քհ.) Խաղաղութեամբդ քո Քրիստոս Փրկիչ մեր...։ Հաւատարեցոյ զմեզ... որք հոգւով եւ ճշմարտութեամբ քեզ Քրիստոսի անմահի հանապազ երկիր պագանեմք։ Բարձր. վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայելէ, եւն եւն։

(Սրկ.) Որք երախայքդ էք՝ երթայք։ եւն։ [Մի ոք յերախայից, եւն։ Դպ. Որք զքերովբէիցն. եւն։ Քհ. Ոչ ոք արժանի է, եւն։[12]]

Եւ բերեն ջուր եւ լուանայ քհ. զծայրս մատանցն, որպէս ասէ սուրբն Դիոնեսիոս։ Սրկ. Եւ եւս խղ.։ Եւ եւս հաւատով եւ սրբութեամբ կացցուք յաղօթս... լցեալ սիրով, առաւել եւ լի ամենայն գործովք բարութեան...։

(Քհ.) Տէր Աստուած զօրութեանց եւ արարիչ ամենայն լինելութեանց... պատուեալ մարդասիրապէս... զհացս զայս եւ զգինիս։

[Սրկ. Ողջոյն տուք, եւն։] Եւ մատուցեալ Սրկ. առնու զհամբոյրն ի քահանայէն եւ մատուցանէ առ ժողովուրդն եւ դպիրսն եղանակեն. Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ, եւն։ Սրկ. ձայնէ առ դուռն խորանին. Ահիւ կացցուք... եւն եւն։

(Քհ.) Արժան է ստուգապէս... զանիծիցն բարձեր զկրծիմն։ Նոր ժողովուրդ ինքեան զեկեղեցի առեալ սեպհականեաց զհաւատացեալս ի քեզ... եղեալ մարդ յաղագս փրկութեան մերոյ...։ [Ժող. Սուրբ սուրբ, եւն։]

(Քհ.) Սուրբ, սուրբ, սուրբ[13] ես ճշմարտապէս... զանազան յեղանակօք... բովանդակ իսկ... պատուական եւ պարտ... ի միջի մերում միշտ անծախապէս... անշփոթ միութեամբ մարմնացաւ ի սուրբ եւ յաստուածածին կուսէն Մարիամայ... ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս բայց ի մեղաց... կամաւ ի խաչն †։

Առեալ զհացն ի սուրբ եւ յաստուածային ձեռս իւր օրհնեաց †... բաշխեալ †... վերձայնէ՝ Առէք կերայք ի սմանէ ամենեքեան. այս մարմին իմ է որ վասն ձեր եւ բազմաց բաշխի...։ Դպ. Ամէն։ — Ըստ նմին... օրհնեաց †... Առէք արբէք ի սմանէ. այս գինի նոր ուխտ է իմով արեամբս, որ յաղագս ձեր եւ բազմաց հեղու...։ — Եւ զայն միշտ իւր յիշատակ առնել պատուիրանադրեաց մեզ... ծանոյց մեզ հաւատեաւ Աստուած ճշմարիտ զԱստուածդ կենդանեաց եւ մեռելոց։ — Եւ արդ մեք Տէր ըստ այսմ հրամանատրութեան... ղփրկագործ չարչարանս †... խաչելութիւնն †... զերանելի † յարութիւնն...։ — [Դպ. Ցամենայնի, եւն։ Քհ. Զքեզ արդարեւ, եւն։]

(Քհ.) Երկիրպագանեմք... առաջեա ի մեզ †, քահանայն կնքէ զինքն, եւ յառաջի եղեալ ընծայս † այս †... սուրբ Հոգիդ †։ Եւ բացեալ զխորհուրդն եւ առեալ զհացն ի ձեռն՝ կնքէ ասելով. Որով զհացս զայս օրհնեալ † մարմին ճշմարտապէս արասցէ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Սրկ. Ամէն։ Նոյնն. Եւ զգինիս օրհնեալ † արիւն ստուգապէս արասցէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Եւ ծածկեալ զխորհուրդն՝ հաստատ խորհրդոյն եւ սեղանոյն կալցէ զձեռն, եւ ասէ զաղօթս. Որպէս զի եղիցի, եւն։

Երկրպագէ երիցս եւ համբուրէ զսեղանն, եւ այլ ոչ դարձցէ. Սովաւ շնորհեա զսէր...։ Սովաւ եւ օդոց զպտղաբերութիւն... զփութապէս առողջութիւն։ Սովաւ հանգո... զմարդասէրս, զվկայեալս...։ Ընդ որս, եւն։ (Քհ.) Աստուածածնի, եւն։

(Սրկ.) Առաքելոց սրբոց...։ Առաջնորդացն մերոց... Թադ., Բարդող. առաքելոցն, Գր. Լուս., Արիստակիսի, Վրթանիսի, Գրիգորիսի, Ներսէսի, Սահակայ եւ ամենայն սուրբ լուսաւորչացն Հայաստանեաց եղ.։ — Միանձնացելոցն սրբոց առաքինասէր կրօնաւորացն Պաւղոսի, Անտոնի, Պաւղա, Մակարա, Մեսրովբայ վարդապետին, Աւնոփրիոսի եւ ամենայն հարց...։ — Թագաւորաց հաւատացելոց Աբգարու, Կոստանդիանոսի, Տրդատայ, Թէոդոսիցն եւ ամենայն սուրբ թագաւորացն եւ աստուածասէր իշխանացն։ — Ընդհանուր ամենայն... ի Քրիստոս կա-

[12] Փոխադրեալը մենք նշանակեցինք (նոյնպէս յաջորդ փոխադրեալները), որոնց հետ եղած միւս կտորներն ալ ի հարկէ կան նաեւ ի L. Վ. Հ. Յովսէփ համառօտիւ նշանակեր է՝ (հոս եւ ասկէ ետքը շատ բան դուրս թողլով) միայն "Որք երախայքդ„ եւն, "Քերովբէական երգ„ ըսելն եւ "Ոչ ոք արժանի է„ աղօթքը։ Զանց առնուած մասերն եւ խրատագիրքն անշուշտ չէին շեղեր մեզի ծանօթ եղածներէն։

[13] Երեք "սուրբ„ բառն ալ գլխագիր է L օրինակին մէջ։

տարեկլոցն՝ եղիցի։ Ժող. Յիշեա Տէր եւ ող.։

Քհ. Յիշեա Տէր եւ ողորմեա եւ օրհնեա զսուրբ կաթուղիկէ…։ Յիշեա… որք ուղիղ վարդապետութեամբ համառօտեն ի մեզ զբանն ճշմարտութեան։ — Քհ. Եւս առաւել զեպիսկոպոսապետն մեր շնորհեսցես մեզ ընդ երկայն աւուրս։ — Սրկ. Գոհութիւն եւ փառաբանութիւն մատուսցուք Տեառն… Սովաւ…։ Եւ վասն… ի Քրիստոս կատարելոցն։ — Քհ. Յիշեա Տէր եւ ող. եւ օրհ. զքո առաջի կացեալ… եւ պարգեւեա իւրաքանչիւր զպիտոյսն…։ Յիշեա… եւ գթա ի հոգիս հանգուցելոցն եւ դասեա զնոսա այցելութեամբ ի լոյս երեսաց քոց եւ արժանի արա ողորմութեան քում։ [Յիշեա Տէր եւ զայնոսիկ, եւն։ Եւ եղիցի ողորմութիւն, եւն։ Սրկ. Ամենայն սրբովք, եւն։ Քհ. Աստուած ճշմարտութեան, եւն։ Ժող. Հայր մեր, եւն։]

(Քհ.) Որ աղբիւրդ ես, եւն։ Քրիստոսիւ Յիսուսիւ, եւն։ Աստանօր քհն. զհացն սուրբ ի յետոյ եւ Սրկ. յայնժ. Պռօսխումէն։ Քհ. Ի սրբութիւն սրբոց։ Ժող. Միայն սուրբ, եւն։ Քհն. դնէ ի մաղզմայն զսուրբ հացն եւ ասէ. Օրհնեալ Հայր սուրբ Աստուած ճշմ… այժմ եւ միշտ։ Ժող. Հայր սուրբ, Որդի սուրբ… օրհն. Հօր…։ Քհն. խոնարհի եւ ասէ՝ Նայեա Տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից… ամենայն ժողովրդեանս։ Քհն. Եւ ջրդագէ երեքս եւ համբուրէ զեղջանն եւ առնու զսուրբ մարմինն եւ արիւնն՝ ասէ. Ի սուրբ †, ի սուրբ †, պատուական… յոյս, յարութիւն…։

Սրկ. Սաղմոս ասասցէք Տեառն Աստուծոյ… յերկինս օրհնեցէք։ Եւ սկսանի եկեղեցին երգել՝ Քրիստոս պատարագեալ։

[14]Եւ մինչ նոքա երգեն, քհն. առնու զսուրբ մարմինն ի յետոյ եւ համբուրէ արտա-սուօք։ Իսկ ի յառաջնումն նուագին են ամենք որ ասեն ... եւ ... են այնո-քիկ, ... եւ Քրիստոս ... ի Յորդանան երկնաւորաց։[15] — Եւ քհն. ասէ. Խոստովանիմ եւ հաւատամ զի դու… զմեղս աշխարհի։ Եւ բեկանէ զհացն սուրբ ի մաղզմայն եւ արասցէ Գ. մասն, եւ զմի մասն արկանէ ի բաժակն եւ երեքն ցամաք ի մաղզմայն որպէս ասեն ամենայն եկեղեցիք Քրիստոսի, եւ բեկեալ արկանէ ի բաժակ որբեանն ասելով. Լրումն Հոգւոյն սրբոյ։ Գառն Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի, ողորմեա մեզ։ — [16]Ապա խնդրէ ի ճշմարտէն Աստուծոյ զղեղջ ... եւ ժողովրդեանն՝ որպէս եւ ... յերկրպագութիւն երգողացն…։ — Եւ մինչդեռ ասէ զսուրբ մարմինն ի յետոյ՝ եւ ննջեցելոցն հանգիստ ասէ եւ զայս աղօթս, որ է Յովհաննու Աստուածաբան աւետարանչին.[17] Զո՞ր օրհնութիւն կամ զո՞ր պատարագ կամ զո՞ր գոհութիւն ի բեկանել հացիս անուանեսցուք… ի միայնումն ի քում մարդն կերպարանեալ։ — Պատարագ սուրբ առաքելոյն Թովմայի, որ էր ի յերկոտասանիցն.[18] Մարմին քո պատուական եղիցի մեզ ի կեանս, եւ սուրբ արիւն քո ի թողութիւն մեղաց։ Եւ փոխանակ լեզուին՝ զոր արբեր… յանհներելի տանջանացն։ Գոհութիւնս այս եղիցի մեզ ի կեանս յուրախութիւն, յառողջութիւն հոգւոց եւ ի բժշկութիւն մարմնոց, ի թողութիւն մեղաց եւ ի փառս քո Քրիստոս Աստուած մեր, այժմ եւ միշտ եւ յաւիտ.։

Եւ յետ այսորիկ՝ ասէ ... ի բաժակն արեանն ... մի, եւ մինչ նա յայս է, դպ. ... Ապա ասէ ... ։ Նոյնպէս եւ դատապ... ի ժողովրդեանն ասելով. Երկիւղիւ եւ հաւատով յառաջ մատիք։ Եւ ժողովուրդն համբուրելով զխաչն ասեն. Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Եւ ... մասնին Բ. եւ արկանէն

---

[14] Ասկէ սկսեալ մինչեւ վերջը շատ կը շեղի L թէ Լամբրոնեանէն եւ թէ Սովորականէն, ճաշակման խրատագիրքն եւս բոլորովին տարբեր ունենալով, սակայն նման ըլլալով հնագոյն BDF ձեռագրաց (տես վարը։)

[15] “[illegible]” խրատագիրն ունին նոյն BDF ձեռագիրքն, որոնց ընթերցման դէմ կը խօսի հոս L-ի գրիչը։

[16] Միա գրուի որ L հոս որեւէ աղօթք չունի ճաշակմանէ յառաջ, ոչ “Հայր սուրբ որ անուանեցեր” եւն մաղթանքն, զոր ունին ամէն ձեռագիրք (նաեւ BDF,) բայց զոր չունի նոյնպէս Լամբրոնեանը։

[17] Յովհաննու Աւետարանչի անուամբ ունին մաղթանքս ուրիշ ձեռագրաց ոմանք ալ, այսպէս F.

[18] Թովմայի առաքելոյ “Պատարագ”, այն տողն է, զոր լիակատար գրենք վերը՝ էջ 169—170. զոր գրեթէ ամէն ձեռագիրք ունին պատարագին վերջը գրուած՝ հաղորդութեան ժամանակ ըսելու։ Ասկէ առնուած են նաեւ մեր Սովորականին մէջ ճաշակման բանաձեւքը՝ “Մարմին քո անդադար լիցի ինձ ի կեանս. Եւ սուրբ արիւն քո ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։” կարծես չմոռնալու համար այս բանս՝ շատ ձեռագիրք առանց սկիզբը կը դնեն խրատագրոյն մէջ “ի բանից

փօղ,[19] եւ արժանաւորէն հաղորդին. եւ պաշտօնէայէն անխափան երգէն, եւ յաւարտման խորհրդոյն եւ յորժամ հաղորդին՝ ըստ պաշտօնէայէն. եւ փՃՆ. աւե. Կեցո Տէր զժողովուրդս քո...: Զկնի հաղորդելոյն դպիրէն ասեն. Լցաք ի բարութեանց կերակրողիդ զմեզ:

Եւ կէս ասրկաւագն բերէ Ջուր լուա(ն)ալ զձեռան փՃՆ.: Սրկն. խառնէ արկանէ շուրջ զսեղանովն. եւ առեալ զսկիհն տանի յընծայարան օծեալն: Եւ սրկն. փարայն. Եւ եւս խաղ.: Եւ եւս հաւատով ընկալեալք...: Դպ. Գոհանամք զքէն Տէր...:

[20](ՔՀ.) Գոհանամք զքէն Քրիստոս Աստուած մեր, որ զայսպիսի ճաշակումն բարութեան շնորհեցեր մեզ ի փրկութիւն կենդանութեան... քո աստուածային խնամովդ... կամաց քոց սրբոց եւ բարերարաց... յարք. երկնից: Բարձր. Տէր Աստուած մեր եւ Տէր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, որ...: — Խաղաղ. ընդ †...: — Անքննին անհաս էակ, ինքնութեանդ հաստիչ, անբաժին, եւ անքակտելութեան սրբոյ Երրորդութիւնդ փառք, իշխ...:

Երկրպագեալ իջանէ ի մէջ եկեղեցւոյն եւ ասէ. Որ օրհնես զայնոսիկ... սուրբ արա զնոսա որք... որ ես Հայր լուսոյ. եւ քո սուրբ անուանդ վայելէ փառք, եւն:

Եւ դպ. եղանակեն. Եղիցի անուն Տեառն, եւն: — Եւ բերեալ նշխար՝ օրհնէ, եւ բաշխէ ժողովրդեանն ասելով. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, եւն:

(ՔՀ.) Կատարումն օրինաց... զամենայն հայրական անօրէնութիւնս...: Օրհնեալ եղերուք... ընդ ամենեսեան:

---

2. *Կիլիկեան Օրինակ* (B) *եւ* DF *ձեռագիրք:* *Անցնինք տեսնելու խումբ մ'երեք ձեռագրաց, որոնք մեր խորհրդամատոյցը շատ տարբեր կերպարանք մը առջեւ կը դնեն: Եթէ նախընթացը (կամ* L) *աւելի Լամբրոնեան օրինակին կը համընթանայ, դիւրաւ կը մեկնուի այն՝ նկատելով իւր գրութեան ժամանակը. եւ վերջապէս — եթէ միայն ապահով գիտնայինք թէ ունի* L *նաեւ Լամբրոնացւոյ յատուկ Հանդիսականի եւ Ձեռնադրութեան Պատարագի մասերը, — կրնայինք եւ պէտք էինք* L *ալ պարզապէս Լամբրոնեան խմբէն համարել. որով իւր ունեցած տարբերութիւնքը՝ մեր Սովորականին հանդէպ՝ իրենց մեկնութիւնը կը գտնէին, Այլ է խնդիրը* BDF *ձեռագրաց համար: Ասոնք յայտնապէս եւ բացարձակապէս մեր Սովորական Խորհրդամատուցի կը վերաբերին, բայց անոր այնպիսի շրջանի մը՝ զոր կրնանք Լնցման շրջան անուանել, երբ տակաւին շատ մասեր անհաստատ եւ վերջնական վիճակին չէին հասած: Ճիշդ է այս՝ յամենայն դէպս՝* B *եւ* D *ձեռագրաց համար, որոնք ամէնէն ուշ ԺԾ դարու կը վերաբերին, բայց յայտնապէս հնագոյն ժամանակի վերաբերող գաղափարէ մ'աւ-ծանցած են: Աւելի դժուարին է մեկնել* F *ձեռագրի երեւոյթը, որ* 1618*ին գրուած է, երբ չէր սպասուեր այսպիսի պլակերպութիւն: Բայց ճիշդ պատարագամատոյցները՝ ինչպէս նաեւ պաշտաման միւս գրքերն իրենց շրջանակին մէջ՝ կը պատկանին գրքերու այն տեսակին, որ կրկնակի ազդեցութեան կ'ենթարկուին դիւրաւ: Ասոնք մէկ կողմանէ՝ քանի որ վերջնական եւ պաշտօնական կերպարանք չեն առած եւ հետ զհետէ կը զարգանան, բնական է որ աճում կամ նուազումն ցուցընեն իրենց վրայ ալ ըստ տրամադրութեանց ժամանակին. միւս կողմանէ՝ ձեռագիրք տպագրութեան պէս հազարներով չէին արտադրուիր եւ իւրաքանչիւր գրիչ գոհ էր, եթէ ամէն անգամ լաւ գաղափար օրինակ մը ձեռք*

---

Թովմայէ առաքելոյն" կամ նման խօսք մը. (տես BDF եւն:)

[19] Մամեզինաց եւ քօղի խորանազերս, որ ցայսօր ալ Հայ եկեղեցւոյ մէջ գործածուած սովորութիւնը կ'արգիլէ. մեզի ծանօթ ուրիշ ձեռագրաց մէջ չկայ:

[20] Աւելի յառաջ չունի L մեր Սովորականին երեք տուն աղօթքը՝ "Գոհանամ զքէն Հայր ամենակալ" եւն. զոր չունին միւս հին ձեռագիրները ալ:

ձգեր գաղափարելու համար։ Շատ բնական էր որ գրիչը յաճախ հին օրինակներ միայն ունենար առձեռն, եւ ղայն կամ ճշդիւ օրինակէր, կամ՝ եթէ սրբագրել անգամ փորձէր՝ ոչ միշտ եւ ոչ ամէն տեղ յաջողէր։ Խորհրդամատոյց-ձեռագրաց բազմակերպ պէսպիսութիւնք շատ պարզ կը մեկնուին ասով։ F ձեռագիրը՝ թէեւ ԺԷ դարուն օրինակուած՝ այնպիսի գաղափարէ մ'ըլլալու է, որ յետականն՝ թէեւ աւելի զարգացած կամ համընթաց Սովորականին՝ հնագոյն BD խմբին կը վերաբերէր։ B ձեռագրի համար ապահով գիտենք որ հին կիլիկեան օրինակէ մըն էր՝ գէթ երկու դար կանուխ քան Bի գրուելու թուականը։ Որովհետեւ այս ձեռագիրս՝ այսպէս ըսենք՝ նախատիպ կրնանք համարել DF խմբին, եւ նորերս մնած ըլլալով մեր մատենադարանը՝ ցուցակագրուած չէ միւս երկուքին նման, պէտք կը տեսնենք նախ անոր վրայ խօսիլ քիչ մ'աւելի ընդարձակ։

B կոչած ձեռագիրնիս հաստ եւ լաւ ողորկեալ թղթի վրայ մաքուր բոլորգիր Ժամագիրք մըն է, մեծ տառերով՝ բայց մատեանը փոքրադիր (8,5 × 6 սնդմ.), էջերը միասին (6 × 4,5 սնդմ.), իւրաքանչիւրն իբր 12 տողով։ Առաջին եւ վերջին թղթերն ի բաց առեալ՝ լաւ պահուած են մնացածները. բայց գիրքը շատ տեղ պակասաւոր է, ինչպէս սկիզբն՝ նոյնպէս մէջերը, եւ դժբախտաբար նոյն իսկ Պատարագամատուցին մէջ Եպիսկոպոսի զգեստաւորութեան աղօթքէն մինչեւ Սրբասացութեան վերջը (Թղ. 105էն ետքը։) Այժմ ընդ ամէնն 159 թուղթ է. յառաջ էր գոնէ 330 էջ կամ 165 թուղթ։ Պարզ կամ առանց նշանաւոր ծաղկման է. միայն խորագիրքն ու տներու սկզբնատառք կարմրագիր են, եւ մէկ երկու տեղ աննշան զարդագրերով (Թղ. 55բ, 89բ, 100ա, 115ա,) եւ Խորհրդատետրին սկիզբն ալ նոյնպիսի խորանիկով. (Թղ. 100ա։)

Պատարագամատոյցը (Թղ. 99ա եւն)՝ միւս Ժամագրքերու հակառակ՝ ամէնէն վերջը դրուած է հոս՝ Խաղաղական ժամուն աւարտելէն ետքը. եւ ամէնէն ետքը կարճ յիշատակարանով մը կը կնքուի[1]։ Վերջնոյս համեմատ՝ Տզանց անապատը՝ Սպերոյ գաւառին մէջ՝ գրուած է մատենիկս ՋԻԳ (= 1474) թուականին Յովսէփ աղա գրչէն "լաւ եւ ընտիր օրինակէ։" Ամէն պատճառ ունինք վերջին տեղեկութեանս հաւատալու, եւ ըստ այսմ ընդունելու որ Յովսէփ աղա իւր առջեւն եղած "լաւ եւ ընտիր օրինակը" ճշդութեամբ գաղափարած է։ Ապացոյց ասոր չի պակսիր. եւ գլխաւորաբար նոյն իսկ այն կէտն է որ 1474ին կ'օրինակէ Յովսէփ պատարագ մ'որ գոնէ երկու դար հնութիւն ունենալու էր եւ մեծապէս կը շեղէր արդէն իւր ժամանակը լիովին գոյութիւն ունեցող մեր Սովորականէն. օրինակի համար 1427ին Մեծոփայ վանքը գրուած ձեռագիրն (Թ. 428)՝ քանի մ'անհաստատ կէտերն ի բաց առեալ՝ մեր այժմու պատարագն է ծայրէ ծայր։ Սպերոյ գաւառի վանաց միոյն մէջ գրող Յովսէփ գրիչը կը մատնէ իւր գաղափարը նաեւ այնու որ Յիշելեաց քարոզութեան մէջ պահած է իւր գաղափարին սա խօսքն ալ՝ "(Գոհութիւն եւ փառաբանութիւն մատուցցուք...) աղաչեսցուք եւ խնդրեսցուք վասն հոգւոյն հանգուցելոյ Նա-

[1] Ահա յիշատակարանը. (Թղ. 158բ—159ա.) "Աղաչեմ աղաչեմ եւ դարձեալ աղաչեմ, ով եղբարք իմ, յիշեսջիք զմեղաւորս գծօղս ի ժամ սուրբ պատարագիս խնդրելով զթողութիւն յանցանաց։ Փառք փրկչին, յիշատակ գրչին. փրկիչն աղօթք ատացողի սորին ամէն։ Գծագրեցաւ աղաւթամատոյց[ս] ձեռամբ անարժան եւ անարհեստ գրչի Յովսէփ Ագէ, լաւ եւ ընտիր օրինակէ, ի թվին. ՋԻԳ. (= 1474) ի գաւառս Սպերոյ, ի յանապատս որ կոչի Տզանց վանք, առ դրան Սուրբ Հրեշտակապետիս։ Անմեղադիր լերուք ամենայն ինչ պակասանաց. զի կար մեր այս էր։"

թագաւորացն մերոցն Լեւոնի, Հեթմոյ[1] եւ նախնեաց նոցին Ռուբինեանց: Ազատութիւն եղբարց մերոց„ եւն: Միւսներն այսպիսի անուններ չունին հոս. այլ կը յորդորեն աղաչել եւ խնդրել "վասն հոգւոյն հանգուցելոց. եւս առաւել վասն բաժանաւորաց մերոց (D յաւ. "եւ նախնեաց նոցին„) եւ շինողաց սուրբ եկեղեցւոյս„ եւն: Միայն — B-ի խմբին կամ ունեցող — F ձեռագիրն է որ փոխանակ թագաւորաց անուանց "բարեխնամեաց„ անուններ դրեր է հոս՝ յիշելով՝ Գօշ, Վանական, Վարդան, Ներսէս, Նոյայէ, Գուքէլ, Տէրտատուր եւն վարդապետները: Աչքի կը զարնէ նաեւ D ձեռագրի այնպէս անյարմար կերպով "եւ նախնեաց նոցին„ ըսելը բարեխնամեաց համար: Ասկէ ալ կը տեսնուի D եւ F ձեռագրաց՝ որ B-ի հետ նոյն խմբին կը վերաբերին, ասկէ եւ իրարմէ խոտորիլը ըստ այլեւայլ գաղափարաց եւ ժամանակին: Հիմնականն այս խմբին եւ հնագոյնն է B յամենայն դէպս, որ ըստ վերնոյն յայտնապէս Կիլիկեան գաղափարէ մը յառաջ եկած է: Վասն զի անհնար է ընդունիլ որ Ցղանց վանաց գրիչն ինքնին աւելցուցած ըլլայ այն անունները՝ անոնց մահուանէն երկու ամբողջ դար, եւ այն՝ Ռուբինեան հարստութեան ալ անկմանէն գրեթէ դար մ'ետքը:

Արդէն հին է նաեւ խորհրդամատուցին նիւթին կազմութիւնը: Որչափ կ'երեւայ նոյն իսկ այն կիլիկեան գաղափարին գրիչը յետկանս հաւատարիմ օրինակող մ'եղած է շատ աւելի հին նախագաղափարի մը, որ հնագոյն էր քան Լամբրոնեանին յօրինումն (1192էն յառաջ.) ամէն դէպքի մէջ՝ անկէ անկախ: Այլազգ անկարելի է մեկնել այն երեւոյթն որ B ձեռագրի պատարագը շատ տեղ աւելի քիչ զարգացեալ է քան Լամբրոնեանն. ուրիշ տեղեր կը պակսին հոս մասեր՝ որ մտած են արդէն Լամբրոնեանին եւ յետոյ մեր Սովորականին մէջ: Ի հարկէ պէսպիսութիւնք այս մասին քիչ չկան մէկ ձեռագրէն միւսը: Օրինակ՝ Եպիսկոպոսի զգեստաւորման (Նարեկացւոյ) երկար զոյգ աղօթքներն ունի Լամբրոնացին, եւ նաեւ B, բայց ոչ DF: Լամբրոնեանն ունի մեր Սովորականին հետ սա զոյգ աղօթքները "Տէր Աստուած մեր կեցո զժողովուրդս քո„ եւն եւ "Որ հաստատեաց զսա„ եւն. ընդհակառակը չունին զասոնք DF (իսկ B հոս պակսելով՝ չենք կրնար դատել.) բայց նաեւ չունի G ձեռագիրն՝ որ այս խմբէն չէ, մինչ AC չունի միայն առաջին՝ առանց մոռնալու երկրորդը կամ "Որ հաստատեաց„ եւն: Այս կարգի շատ պէսպիսութիւնք կրնայինք տակաւին յիշել, բայց աւելորդ կը համարինք՝ արդէն նշանակած ըլլալով Սովորականին համեմատութեանց մէջ:

Դժբախտաբար B պակասաւոր է սկիզբներն՝ բաւական մեծ թերթ մ'ունենալով. որով այն մասերուն Կիլիկեանի որպիսութիւնն անծանօթ կը մնայ մեզի: Անշուշտ կրնանք այս պակասը լեցնել ասոր մերձաւոր D ձեռագրէն, որ իբր ԺԴ—ԺԵ դարուն գրուած է, բնագիրը շատ նման B-ի՝ առանց սակայն բոլորովին նոյն ըլլալու: Ամէն կէտ կշռելով լաւագոյն համարեցանք Կիլիկեան

[1] Հոս յիշուածները կրնան ըլլալ կամ Լեւոն Ա (1198—1219) եւ Հեթում Ա (1226—70), եւ կամ Լեւոն Բ (1270—89) եւ Հեթում Բ (1289—1305:) Տարակոյս չկայ որ "նախնեաց Ռուբինեանց„ հետ յիշատակուածն է առաջին արքայն նոյն ցեղէն Լեւոն Ա (իբր իշխան Բ) եւ Հեթում Ա, որ բաց աստի իբրեւ բարեպաշտօն եւ կրօնաւորեալ՝ սիրելի էր հայ միաբանակեցաց յատկապէս: Յամենայն դէպս ԺԳ դարու վերջերէն էր Ցղանց վանաց օրինակին գաղափարը:

օրինակը կամ B նախ գնել հոս առանձինն. այսինքն քաղելով իր կմախքն այնպէս ինչպէս ըրինք Լիոնեան օրինակին։ Հոս գլխաւոր կէտը խրատագրերն ըլլալով՝ գրած ենք նոյները սովորական տառերով, իսկ աղօթքներու եւն սկզբնաւորութիւնքը՝ նօտրագիր։

(B) *Կիլիկեան Օրինակ։*

1. Աւրէնք արկանելոյ ապաշխար եկեղեցոյ։ Յորժամ կամիցի քհն. պատարագ մատուցանել, պարտ է այս[պէս] խորհրդաբար զգեստաւորիլ։ Մտանէ հանդերձ սարկաւագաւքն եւ դպրօք յաւանդատունն, ուր զգեստքն են պատարագին. եւ զգենուն զհանդերձան ըստ իւրաքանչիւր առաքինանի։ Ասեն Սղմ. տուն առ տուն ամենեքեան՝ Յիշեա Տէր զԴաւիթ։ Եւ ապա քարոզէ Սրկ. Եւ եւս խաղաղ.։ Ժողովուրդն՝ Տէր ող.։ Սրկ. Խնդրեսցուք հաւատով։ Ժղվ. Կեցո Տէր։ Սրկն. Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր։ Ժղվ. ԺԲ՝ Տէր ող.։ Եւ քհն. ասէ զաղօթս զայս. Որ զգեցեալ ես, եւն։

2. [1] Դնէ քհն. յառաջ զխոյրն ի գլուխն. Դիր Տէր, եւն։ Շապիկն ասէ. Զգեցո ինձ Տէր հանդերձ, եւն։ Գաւտին ասէ. Շուրջ պատեսցէ, եւն։ Ուրարին. Զգեցո Տէր զարդարութեամբ, եւն։ Բազպաններն. Տուր Տէր, եւն։ Շուրջառին. Տէր ողորմութեամբ, եւն։ Պարանոցն ասէ. Ցնծասցէ անձն իմ, եւն։

3. [2] Յետ այսորիկ խոնարհեալ առագերէցն եւ ասէ զխոստովանութիւնն. Խոստովանիմ առաջի Աստուծոյ եւ սրբուհւոյ Աստուածածնին եւ սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի, յիշեա եւ զայլ սուրբսն զոր եւ կամիս, եւ առաջի ձեր Հարք, եւն։ Պատասխանեն քհյքն. որ մերձ են. Ողորմեսցի ձեզ Աստուած, եւն։ Ինքն ասէ ի վերայ նոցա։ Ազատեսցէ եւ զձեզ, եւն։[3]

4. Իսկ եթէ եպիսկոպոս լինի խորհրդածուն առնու զսուրբ կնքեան՝ ածեալ ի վերայ լանջացն եւ զպատուական եմփորոնն. եւ գայ առընթեր ընծայարան սեղանոյն. լուացեալ զձեռն, եւ մատուցեալ անկանի առաջի սրբոյ սեղանոյն անմռունչ եւ ասասցէ զաղաւթս զայս առ Հոգին անուրէն գործոյն. Գրիգորի Նարեկացւոյն։[4] [*Հոս թղթեր ինկած են, մինչեւ Սրբասացութեանց վերջը։*]

5. [*Կը սկսի B' թղ. 106ա. Սրբասացութիւնը.* Թագաւորութեան երեւելոյ եւ յերկրաւորաց իջեալ...] Իջեալ է յերկնից Որդի միածին Թագաւոր, եւն։ Աւ. Եշ. Որ Քերովնոսի, եւն։ Ցինանց, Խշ. Ով է որպէս, եւն։ Կր. Եկ. Հրշ. Հրեշտակային կարգաւորութեամբ, եւն։ [Մրս.] Սրբութիւն սրբոց, եւն։ — Որք զՔերովբէիցն խորհրդաբար, եւն։[5]

6. Իսկ յորժամ դպիրքն եղանակեն, քհն. խոնարհի առաջի սուրբ սեղանոյն եւ խորհրդաբար ասէ զաղաւթս, զի ի միասին աւարտեսցին. Ով ով ործանի է յոլովանելոցս, եւն։ Եւ կատարի Աղաւթքս եւ Սերովբէական երգ միանգամայն։ Ապա Սրկ. առ դուրս խորանին ձայնէ բարձր. Մի՛ ով յերկիր։ Եւ կիսասարկաւագն ջուր բերէ առաջի քահանային, առ ի լուանալ զծայրս մատանցն։ Սրկն. քարոզէ ի ձայն. Մի՛ ով յերախայից եւ մի ով, եւն։ Ժողով. միաբան երգեն (Դպ.) Մարմին տէրունական, եւն։

Եւ Սրկ. քարոզէ. Եւ եւս խղ.։ Ժողով. Տէր ող.։ Սրկ. քարոզէ. Եւ եւս հաւա-

[1] Հոս կը պակսի Սովորականին խրատագիրը "Եւ մատուցեալ սարկաւագունքն" եւն, որ կայ Լամբրոնացւոյ քովն ալ։

[2] Սովորականը հոս ունի նաեւ "Լուացայց", "Դատ արա", յետոյ "Ի վան սրբուհւոյն", "Սուրբ Աստուածածին" եւ "Ընկալ Տէր", որ անծանօթ են՝ ինչպէս B ի՛ նոյնպէս Լամբրոնեանի։ Վերջինս նաեւ խոստովանութիւնքս չունի։

[3] B չունի ամէն եսքը Սովորականին "Մաքց" մասերն, "Յիշեա Տէր... Յիշեալ... Աղաչեմ զձեզ... Սուրբ եկեղեցի... Ի մէջ տաճարի... Մտից առաջի սեղանոյ... Դատ արա... Օրհնեսցուք զՏէր... Ի յարկս սրբութեան" եւն։ Այս մասերը չունի նաեւ Լամբրոնեանն, եւ ուրիշ հին ձեռագիրք ալ, այնպէս AEH. նոյնպէս ի հարկէ D, բայց F մէկ երկու մաս ունի։

[4] Ըստ այսմ կային ի B "Ամենակալ Աստուած բարերար" եւ "Աղաչեմ եւ սպասեմ" երկար դիւր աղօթքները, որ կան արդէն Լամբրոնացւոյն քով. իսկ DF չունին։ Մնացեալ թերի մասերը ասս վերջին ձեռագիրներս։

[5] Այս "քերովբէական" տաղին տեղ կը պակսին ի B երկու Սրբասացութիւնք Պահոց եւ Մարգարէից. (Հմմտ. մեր Սովորականը։) DF Սրբասացութիւնները չեն գրած՝ շատ ձեռագրաց պէս։

պատուած ըլլալով՝ գլխին անունը լիակատար գրուած չենք կարդար հոն. բայց գրքին ուրիշ մէկ տեղէն կամ մանր յիշատակարանէ մը[1] կը ճանչնանք նոյնը՝ Յովհաննէս եպիսկոպոս Մոկաց։ — Պատարագամատոյցը[2] կազմութեան կողմանէ՝ համառօտիւ ըսենք՝ ընդհանրապէս յաճախ կը համընթայ վերոյիշեալ A կամ Մեծոփայ վանաց ձեռագրին հետ։ Այս պարագայն ալ ծանրակշիռ է. վասն զի թէ A եւ թէ՛ այս C ձեռագրի գաղափարք գրուած են միեւնոյն տեղը՝ Մեծոփայ վանքը։ Վերջնոյս պահած յիշատակարանը կը ծանուցանէ որ հանրածանօթ Թովմաս Մեծոփեցի (+ 1446) աշակերտներէն ըրած է Ժամագրոց, ուստի նաեւ երկուքին մէջ եղած Խորհրդատետրին. ինչպէս գիտենք նաեւ ուրիշ նիւթերու համար ալ, այսպէս՝ Կարգին Օծման հիւանդաց։[3] Ըստ այսմ երկու ձեռագիրքս ալ Մեծոփեցւոյ սրբագրած օրինակին ներկայացուցիչն են, թէեւ այլեւայլ տեղեր գրուած եւ երկրորդը առաջինէն 75 տարի ետքը գաղափարուած, եւ թէեւ A չէ պահած Մեծոփեցւոյ յիշատակարանը։ Յամենայն դէպս 1512ին Մոկաց գաւառը գրուած օրինակը գրեթէ դար մ'աւելի հին օրինակ մը մեր առջեւ կը դնէ, իր գաղափարը գրուած ըլլալով Մեծոփեցւոյ մահուանէն (1446ին) առ նուազն ժամանակ մը յառաջ։

Սակայն պէտք չէ կարծել թէ Մեծոփեցւոյ այս "սրբագրութիւնն„ ազդեցութիւն ունեցած ըլլայ բնագրի կերպարանափոխ ըլլալուն կամ թէ ըսենք մեր Սովորականին իր արդի ձեւն առնելուն վրայ։ Սրբագրութիւնն՝ եթէ եղած է Պատարագի համար ալ, շատ աննշան իրաց մասին եղած ըլլալու է. թերեւս պարզապէս այն ժամանակի սխալագիր օրինակաց ուղղելով միայն։ Բնագիրը բոլորովին նոյն է թէ՛ AC կամ Մեծոփեան օրինակաց եւ թէ՛ միւսներուն մէջ՝ ընդհանրապէս խօսելով։ Տարբերութիւնք կան՝ ինչպէս ամէն հին ձեռագրաց՝ նաեւ AC օրինակաց մէջ. բայց ոչ աւելի շեղելով Սովորականէն քան՝ օրինակի համար՝ EGH եւն օրինակները, նախընթացներէն բաւական հեռաւոր ժամանակաւ եւ գրչութեամբ։ Հնագոյն M ձեռագիրը կամ Մոնաքեան օրինակը չյիշեցինք հոս դիտմամբ. վասն զի աս ալ նոյն ժամանակէն եւ այն՝ Մեծոփեան օրինակ մըն է։

Գործոյս ընթացքին մէջ յաճախ յիշուած M ձեռագիրը, ինչպէս տեսանք, կը ներկայացընէ Պատարագամատուցաց հաւաքում մը՝ 1289ին գրեալ գաղափարէ մ'օրինակուած մէկուկէս դար ետքը կամ 1427—32 տարիներուն մէջ։[4] Կրնանք ըսել ապահովութեամբ որ մեր սովորական պատարագն այն հին հաւաքմանէն չէ նոյն ձեռագրին մէջ. եւ անոր համար միւսներէն անջատ դրուած է իր բուն տեղը կամ ճաշու ժամէն ետքը։ Յամենայն դէպս գրեթէ նոյնչափ հին է, որչափ A, կամ վերջինէս 5 տարի միայն կրտսեր։ Մէկ ձեռքէ չէ գրչութիւնը. հին պատարագամատուցաց մասը գրած է Մեծոփեցւոյ աշակերտներէն Զաքարիա՝ Ուրծայ վանքը ՊՀԶ (= 1427) տարին, ուստի ճիշդ Aի գրուելու թուականին. իսկ Ժամագիրքը գրած են Զաքարիայի հետ երկու ուրիշ աշակերտներ ալ՝ Մկրտիչ վարդապետ եւ Յովհաննէս, (մինչ ծաղկիչն եղած է Ամթայ Մկրտիչ եպիսկոպոսն.) եւ այն՝ հրամանաւ Թովմայի Մեծոփեցւոյ եւ "ի

---

[1] Հմմտ. Թղ. 42ա. "Զաստուածապետեալ գծողս զՅովհաննէս ("Յհն„) եպիսկոպոս միով Աստուած ողորմիւ արժան արարէք։„ Անշուշտ իւր գործածութեան համար գրած էր։

[2] Խորհրդատետրը կը գտնուի Ճաշու ժամէն ետքը՝ Թղ. 47բ—97ա։

[3] Տես իւր յիշատակարանը "Ցուցակ„, էջ 677։

[4] Ձեռագրիս վրայ տես վերն էջ 84—87։

*Հրաշափառ ուխտս* Մեծոփայ" *ՊՁԱ* (= 1432) *թուին,*[1] *խնդրելով Ներսէս կրօնաւորի։ Յատուկ յիշատակարանիկէ մ'ալ կ'իմանանք որ մեր Խորհրդատետր պարունակող մասին գրիչն է Մկրտիչ վարդապետ։*[2]

*Ըստ այսմ՝ երեք օրինակ ունինք ձեռքերնիս գրեթէ ժամանակակից եւ նոյն տեղն եւ նոյն անձին հսկողութեամբ գրուած։ Եթէ վերոյիշեալ "սրբագրութիւնն" էական մասանց համար ալ արժէր, պէտք էր որ* ACM՝ *միւս ձեռագրաց հանդէպ՝ մեծ խտորում ցուցընէին եւ ուրոյն խումբ մը կազմէին, գոնէ ինչպէս տեսանք* BDF *օրինակներուն վրայ։ Չենք ուրանար, որ* ACM *ալ սերտ կապ կը ցուցընեն. բայց իրարմէ ալ նուազ չեն շեղիր քան միւսներէն։ Դիւրաւ կրնայ այս ըսուածին ապացոյցներ գտնել բանասէր մը յաջորդ բնագրին համեմատութիւններն աչքէ անցընելով։ Յիշենք միայն մէկ երկու դէպք։ Վերը յառաջ բերուած*[3] *սկզբնաւորութեան մասերուն մէջ* ("Խոստովանիմ" *եւն* "Լուսայոյս", "Սուրբ զԱստուածածին" *եւն) ճիշդ* AM*ի պէս ունին նաեւ ուրիշ օրինակներէն* EHN, *իսկ* C *աւելի հնագոյն երեւոյթ ունի միայն* "Խոստովանիմ" *եւն եւ յարակիցներն ունելով, առանց* "Լուսայոյս" *(որ յետոյ նոր ձեռքէ աւելցուցած է) եւ միւսները յիշելու.* IJ *աւելի զարգացած են, շատ աւելի* GK*։ Առաջին Կցորդի աղօթքն* ("Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ") *ամէն ձեռագիր ունի. երկրորդն* ("Տէր Աստուած մեր կեցո" *եւն) եւ երրորդը* ("Որ հաստատակոյց" *եւն) չունին* DF *ձեռագրաց հետնորագոյն օրինակները* GJKN$^{1-2}$*։ Ի՞նչ երեւոյթ կը ներկայացընեն հոս Մեծոփեան ձեռագիրները։* M *այս երկուքն ալ ունի, ճիշդ ինչպէս* EHI՝ *ԺԶ եւ ԺԷ դարու գրուած օրինակները. իսկ Մեծոփեան* AC *երկու ձեռագիրք միայն երրորդը կամ* "Որ հաստատակոյց" *աղօթքն ունին, առանց երկրորդին։ Ճաշակմանէն յառաջ անյարիր կերպով մուծուած* "Յովհաննու Ոսկեբերանին" *տրուած աղօթքը* ("Պահպանեա եւ ծածուցանես" *եւն) չունի* A, *բայց ունին երկու Մեծոփեան օրինակները* C *եւ* M, *որոնց վերջինն արդէն Լամբրոնացւոյ պատարագին մէջ ալ նոյնը մուծած էր, ինչպէս տեսանք։*[4] *Ըստ այսմ իրարու անմիաբան են հոս ալ Մեծոփայ օրինակներն, ուր ընդհակառակն միւս օրինակները նախընթաց դիպաց պէս նոյն խմբակցութիւնը կը ցուցընեն. այսինքն նոյն* EHI *ձեռագիրներն են որ* CM*ի համընթաց են եւ ունին* "Ոսկեբերանի" *աղօթքը, իսկ* GJKN$^{1-2}$ *չունին՝ իրենց կողմն ունենալով* ABDFL *ձեռագիրներն ալ։*

*Բաւական կը համարինք* ACM *ձեռագրաց իրարու եւ ասոնց՝ միւսներուն հետ ունեցած աղերսին վրայ այս օրինակները, աւելորդ կրկնութիւն չըներու համար. ուստի կ'անցնինք համառօտիւ յիշելու միւս ձեռագիրները՝* ABCDF *եւ* L *օրինակներէն զատ, որոնց մասին խօսեցանք։*

*Հնութեամբ առաջինն է ցուցակիս մէջ մեր մատենադարանի Թ.* 196 *ձեռագիր Ժամագիրքն՝ մեծ եւ կանոնաւոր բոլորգրով։ Գրուած է ՌԽԲ* (= 1593) *թուականին "խորհուրդ պատարագի աղօթամատուցս աստուածային* է յօրոյ եւ ընթեր առընթերնակէ՝ *ձեռամբ... Մխիթար դպրի ի քաղաքն Սեբաս-*

---

[1] Յիշատակարանքս տես վերն էջ 85 եւ 86։

[2] Հմմտ. Թ. 268, Թղ. 12ա, ուր "Որ զինչ-ում եւ զեղոյր" եւն կամ զգեստաւորմանն աղօթից սկիզբը կցուած է յիշատակարանս. "Զխեղկելի գրիչ զՄկրտիչ ուսումնուն վարդապետ յիշեա ով սուրբ պատարագաւղ, եւ զՆերսէս կրաւնաւոր ստացաւղ գրոյս. եւ Աստուած զքեզ յիշէ. ամէն. ի թվին ՊՁԱ." (= 1432։)

[3] Տես վերը՝ էջ 583—84 եւ Ծան.։

[4] Տես վերն՝ էջ 555, Հաւ. ԻԳ. սկիզբը։

տիոյ„ եւն։ Պատարագն իւր սովորական տեղին կը բռնէ՝ Ճաշու ժամէն ետքը,[1] ունենալով ի վերջոյ «Այլ աղօթք որ ասի նախ քան զՃաշակել խորհրդոյն ի բանից Թովմայի առաքելոյն. Մարմին քրիստոսական„ եւն սաղմ, զոր յաճախ յիշեցինք, եւ դարձեալ «Տեառն Ներսէսի Լամբրոնացւոյ Խրատք եւ սահման վերջգրեալ գործոյս. Քանզի բազում ինչ եղեց բանս„ եւն։ Անցողակի ըսենք՝ որ Լամբրոնացւոյ անուամբ այս հատածն ալ շատ ձեռագրաց մէջ կայ, օրինակի համար ի M (Թղ. 28ա—բ), նոյնպէս Պատարագի ծայրը դրուած նաեւ Արճիշեցւոյ Պատարագի մեկնութեան վերջը. (հմմտ. Թ. 174։) Այս Թ. 196 ձեռագրի Խորհրդատետրը, զոր E համառօտութեամբ կը նշանակենք, յեականս լիովին կը համընթանայ մեր Սովորականին հետ։

Ասկէ 25 տարի կրտսեր Թ. 333 ձեռագիրն (F), ինչպէս տեսանք, շատ շեղումներ ունէր՝ վերաբերելով հնագոյն BD խմբին։ Իսկ Fէն միայն 10 տարի կրտսեր է Թ. 195 Ժամագիրքն ՌՀԷ (= 1628) թուականին մեծ եւ գեղեցիկ բոլորգրով, որուն համար կ'ըսէ յիշատակարանը թէ «գրեցաւ եւ կազմեցաւ աղաւթմատոյցս [illegible], որ էր ուղղէալ ի սուրբ հարանցն յընտիր աւրինակաց աստուածաբան վարդապետացն եւ հոգելից մերոյ ազգիս Թարգմանչացն, ի Թվականիս Հայոց .ՌՀԷ. ամին, ի գաւառն Խորձիւնի ի Կեղալեառն„ եւն, Մելքիսեդեկ կրօնաւոր գրչէն։[2] Պատարագը, զոր G կը նշանակենք՝ իւր սովորական տեղն է Ճաշու ժամէն ետքը եւ ընդհանրապէս նոյն մեր Սովորականին հետ. հոս ալ կ'աւարտի «ի բանից Թովմայի առաքելոյ„ տաղով։ Աս ձեռագրին հետ շատ տեղ նմանութիւն կը ցուցնէ Թ. 406 կամ K կոչածնիս։

Արդէն նախընթաց G ձեռագիրը ԺԷ դարուն սկիզբէն էր։ Ցաջորդներն նոյն դարուն կէսէն ետքն ալ գրուած են, ուստի այն ժամանակէն՝ որ խորհրդատետրի տպագրութիւնք ալ կային եւ հետզհետէ տիրող եղան։ Կրնար ըստ այսմ կարծուիլ այս ուշ ժամանակի ձեռագիրք ազդուած ըլլան տպագիրներէն։ Սակայն այնպէս չենք գտներ մեր ձեռքն եղած ԺԷ եւ ԺԸ դարերէն 6 ձեռագիր խորհրդատետրներն. եւ այս կ'ապացուցանէ մեր վերն արդէն ըսածը թէ այս կարգի դրութեանց համար յաճախ նշանակութիւն չունի գրչութեան տարին, եթէ միայն օրինակողն հին գաղափար մ'ունէր։ Պատարագի ներքին կազմութեան կողմանէ նախընթացներէն տարբերութիւն չունին ըստ այսմ նաեւ յաջորդ ձեռագիրքը՝ Թ. 193 (կամ H) որ գրուած է ՌՂԸ (= 1649) թուականին Կարապետ գրչէն յԱկլեայ Ս. Նշան՝ բոլորգրով.[3] — դարձեալ Թ. 406 (կամ K) գրուած ի թուին ՌճԺԳ (= 1664) Վարդան գրչէն Մուշ քաղաքը՝ բոլորգրով.[4] — եւ Թ. 388 (կամ N) իբր ԺԷ—ԺԸ դարուն գրուած, գրիչն եւ գրութեան տեղն անծանօթ, առանց յիշատակարանի ըլլալով նօտրգրով։[5] Առաջին երկուքը

---

1 Թ. 196, Թղ. 72ա—141ա։ Ուրիշ տեղեկութիւնք տես «Ցուցակ„, էջ 517—18։

2 Պատարագն է ի Թ. 195, Թղ. 80ա—151բ։ Ձեռագրին մասին տես «Ցուցակ„, էջ 515—17 եւ քանի մը տող լուսանկարով ի Տետ. Բ, 15։

3 Տես «Ցուցակ„ էջ 512—13. պատարագն է ի Թ. 193, Թղ. 83բ—159բ Ճաշու ժամէն ետքը։

4 Տես «Ցուցակ„, էջ 857—58. պատարագն է ի Թ. 406, Թղ. 82ա—156ա Ճաշու ժամէն ետքը, աւարտելով «Թովմայի առաքելոյ„ տաղով։

5 Տես սորա վրայ «Ցուցակ„ էջ 841—42. պատարագը կը գտնուի ի Թ. 388, Թղ. 36ա—62բ, աւարտելով նոյնպէս «Թովմայի առաքելոյ„ տաղով։

նախընթացներուն պէս Ժամագիրք են ունենալով ըստ կարգի Խորհրդատետրին ալ։ Վերջինն ընդհակառակը յատկապէս Խորհրդատետր է՝ միայն սկիզբը պարզատումար ալ ունենալով, ուստի այն սակաւաթիւ ձեռագիրներէն՝ ուր Պատարագամատոյցը Ժամագիրքէն անկախ է. սակայն պատարագի բովանդակութեան կողմանէ տարբերութիւն չունի նախընթացներէն։ Միայն աւելի յոռի եւ սխալաւոր գրչութիւն մըն է այս։

Ասոնցմէ զատ երեք ձեռագիր ալ կայ ԺԷ դարէն, որոնք աւելի արժանի են ուշադրութեան։ Առաջինը կամ այն զոր I[1-2] համառօտութեամբ կը նշանակենք, մօտերս մտած ըլլալով մեր հաւաքումը, տորագրուած չէ "Ցուցակին„ մէջ. ուստի հոս պէտք է քանի մը տեղեկութիւններ տալ։ Բաւական հաստ եւ դեղնագոյն կոկուած թղթի վրայ մաքուր նոտրգիր ձեռագիր մըն է՝ 82 թղթով, բայց միայն 73 թուղթը բուն գրչէն է, մնացեալը յետոյ յոռի գրչութեամբ լեցուած այլեւայլ տաղերով։[1] Թէեւ ոչ մեծադիր է գիրքը (գրեթէ 15×10,5 սնդմ.), բայց ամէն էջ երկսիւն է, իւրաքանչիւր սիւնը 10×3 սնդմ. մեծութեամբ եւ իբր 26 տողով, գիրը՝ թէեւ մաքուր՝ մանր ըլլալով։ Թէեւ գլխաւոր յիշատակարանը[2] թերի կը մնայ այնտեղ թուղթ ինկած ըլլալով, ինչպէս ուրիշ մէկ երկու տեղ ալ,[3] գոնէ գիտենք որ ձեռագիրս ՌՂԷ (= 1648) թուին գրուած է Աստուր սարկաւագի համար Խաչատուր գրչէն։[4] Խորագիրները եւ խրատագիրք կարմրաւ են. մնացեալը պարզ, եթէ միայն քանի մը մանուշակագոյն խորանիկներ եւ զարդագրեր ու լուսանցազարդեր չհաշուենք, որոնք մեծ արուեստ մ՚ալ չեն ցուցըներ՝ բայց ոչ ալ անյաջող։[5] Յատկապէս պատարագամատոյց է գիրքը, երկու գլխաւոր մասի բաժնուած։ Առաջինը (զոր մենք I կը նշանակենք), Խորհրդատետր է լիակատար, այսինքն այնպէս՝ ինչպէս էին նախընթացները, ոչ միայն քահանային մասերն, այլ եւ սարկաւագի քարոզութիւնքն եւ դպրաց տաղերուն մեծ մասն ունենալով. (Թղ. 1ա¹—16բ։) Ասոր կը կցին՝ առանց որեւէ բաժանման՝ քանի մը մեղեդիք եւ Գր. Նարեկացւոյ մէկ տաղն "վասն աւուր ծննդեան„ (որ կը սկսի "Աւետիս մեծ խորհրդոյ„ եւն՝ Թղ. 17ա.) ասկէ ետքը (Թղ. 19ա) բուն Կարգ դպրութեան կամ դպրաց միւս տաղերը ("Խորհուրդ խորին,„ "Յայս յարկ„, Սրբասացութիւնք„ եւն եւն.) եւ սարկաւագի ալ մեծ քարոզութիւնքն ("քարոզ միահամուռ„ եւ Հանգանակ, "Առաքելոց սրբոց„ եւն, "Գոհութիւն եւ փառաբանութիւն„ եւն) աւարտելով "Լցաք„էն ետքը. (Թղ. 19ա—29ա)։ Ասկէ ետքը կու գան այլեւայլ տաղեր,[6] ի մասնաւորի հաղորդութեան այն երկայն տաղը որ կը սկսի "Որ ի հնգից

---

[1] Թղ. 74ա կը սկսի տաղս "Ամէն առաւօտ եւ լոյս, պայծառ էր նստեր յայգոյս„ եւն. Թղ. 76ա "Ես եմ կորուսեալ ոչխար„ եւն Կեչառուեցւոյն. յիշենք ի մէջի այլոց նաեւ (Թղ. 79ա) "Ցող ներբողական ի Մարկոս վարդապետէ ասացեալ. Անեղ Հայր Աստուած արքայ„ եւն։

[2] Թղ. 73բ² "Գրեցաւ խորհրդոյ տըր----բեան ես ------------բեան տետրակս ի թվին ·ՌՂԷ· ի վայելումն սարկաւագ Աստուրին։„

[3] Թղթեր ինկած են աս տեղերը՝ Թղ. 8—9, 28—29, 34—35։

[4] Հմմտ. նաեւ Թղ. 29ա³ Դպրութեան ծայրը. "Զայս սաղ եղբայր սիրելի եւ ապա զԳոհանամքն, եւ յետ Գոհանամքին զԲաշխելոյն. վասն զի օրինակն չկայր. եւ զմեղաւոր Խաչատուր երէց եւ զխեղճուկ Աստուրն յիշեա ի Քրիստոս Աստուած։„

[5] Հմմտ. խորանիկներ՝ Թղ. 1ա, 45բ, 49բ։ Լուսանցազարդ եւ զարդագիր՝ Թղ. 1ա, 8ա, 17ա, 19ա, 20ա, 21ա—բ, 23ա, 27ա, 28ա, 45բ, 47ա, եւն։

[6] Ի մէջի այլոց Թղ. 32ա "Զեննման եղէն պարարակին, որ ի խաչէն պատարագին„ եւն. Հանգանական կարգէն քանի մը բան ("Ես սասցի ի վերանալ յինէն աւուրց իմոց„ եւն, "Աշեղ խորհուրդ„ եւն, եւն։)

նկանակաց„ եւն, եւ որ կիսատ կը մնայ։ Թղ. 39ա—45ա կը գրուին Մեղեդիք պատարագի՝ աւելի ճոխ քանակութեամբ, քան սովորական տպագրուածներունը, ասկէ ետքը կը կցուին Ժամագրքի ուրիշ երգեր, այլեւայլ Գանձեր եւ տաղեր,[1] որոնք կապ չունին պատարագի հետ, միայն ընդհատուած են՝ ատոնց մէջ մուծուելով (Թղ. 49բ—55բ) "Ժամամուտ կարգաւ։„ Վերջին մաս կամ տաղարան, զոր $I^2$ համառօտութեամբ կը նշանակենք, խազերով է ըստ սովորութեան նոյն կարգի մասեաններու։ Աս ալ այն քիչերէն է, ուր Խորհրդատետրը մտած չէ Ժամագրքին մէջ, եւ ուր Խորհրդատետր ու Սպասաւորութիւն քովէքով են։ Ներքնոյն գալով՝ նախընթաց պատարագներէն տարբեր չէ, ուստի ձեռագիր Խորհրդատետրներու ամէն յատկութիւնքն ունի։

Երկար ժամանակ տարակուսեցանք Թ. 267 ձեռագրի պատարագն ալ (J) մեր համեմատութեանց մէջ առնելու։ Այս ձեռագիրը, որ Ժամու գիրք է՝ պաշտաման ամէն մասեանները մէկտեղ ունենալով, ՌՃԺ—ԻԱ (= 1661—72) տարեաց մէջ գրուած է Նոտրգրով Տէր Գրիգորէ եւ իւր աշակերտներէն ի Ստանիսլաւ, ուստի Լեհաստան։[2] Սակայն Լեհահայոց պատարագի միւս ձեռագիրներէն՝ որոց մասին քիչ մ՚ետքը, սա մեծ տարբերութիւնն ունի այս ձեռագիրն որ հոս գրեթէ ըստ ամենայն մասին մեր Սովորական պատարագն է որ կ՚օրինակուի, եւ ոչ Լեհահայոց յատուկն ու փոփոխեալն։ Նոյն իսկ ասոր համար յարգի օրինակ մըն է, որ կը ցուցընէ թէ ԺԷ դարուն վերջերը Լեհաստան տակաւին անփոփոխ Խորհրդատետրներ ալ կային գործածութեան մէջ։ Բայց ասոր նշանաւոր է այս օրինակն անով ալ որ հոս Խորհրդատետրն եւ Կարգադրութեան միացած են, ուստի ամբողջական եւ լիակատար օրինակ մը, մի միակը որ "Խորհուրդ խորին„ տաղով կը սկսի։ Աս ալ կ՚աւարտի — միւս բոլոր ձեռագրաց պէս — առանց վերջին աւետարանն ունենալու։

Կը մնայ օրինակ մ՚ալ Թ. 531, (զոր $N^3$ կը նշանակենք), իբր ԺԷ—ԺԸ դարերէն, գրիչը ու գրչութեան տեղն անծանօթ, եւ թերի մնացած. վասն զի բուն գրչին մեծ բոլորգրով սկսածը մինչեւ Թղ. 73 եւ պատարագի գրեթէ կէսը կը հասնի. մնացածը շարունակուած է յոռի գրչութեամբք։[3] Ձեռագրիս պատարագը նշանաւոր է անով որ ճիշդ BDF խմբին նման է կամ անոր կը վերաբերի, որուն ուրուագիծը դրինք վերը քաղելով։ Աս ձեռագրին տարբեր խրատագիրքն եւն պէտք տեսանք՝ ոչ թէ հոս կամ վերը BDF ձեռագրաց հետ՝ դնել՝ այլ վարը բուն Սովորականին համեմատութեանց մէջ, ուր յիշեալ BDF խմբի ներկայացուցիչը կ՚ըլլայ։ Դժբախտաբար նոր մասին յոռի գրչութիւնը նաեւ յաճախ սխալաշատ է։ ԺԷ դարուն ասոր գրիչն ալ այնպիսի հին գաղափար մ՚ունէր իւր առջեւն, ինչպիսի էր նոյն ժամանակները կամ 1618ին գրող F ձեռագրի գրչին ունեցածը։

Ասով կը կնքենք մեր գործածած ձեռագիր օրինակաց շարքը, անոնց՝ որ լիակատար Խորհրդատետր են։ Բայց կան շատ ուրիշներ ալ՝ որ միայն այլեւայլ

[1] Ի մնանուորի գանձերս (Թղ. 63բ) "Գոյակն էական Հաւր սոհման եւ բան,„ Գրիգորէ. (Թղ. 64ա) "Խորհուրդ անճառ անհաս անքնին„ եւն՝ Խաչատրոյ. (Թղ. 65ա) գանձ Ստեփաննոսի ի Մկրտչէ. (Թղ. 65ա) Տաղ Մարիամու՝ "Աւետիս քեզ Մարիամ, զոր Գաբրիէլ ակզբնաւորեալ„ եւն. եւ նմաններ, որ յաճախ կը հանդիպին Տաղարաններու մէջ։

[2] Ասոր վրայ տես "Ցուցակ„ էջ 684—85։ Պատարագն է՝ Թ. 267, Թղ. 65բ—76բ։

[3] Տես "Ցուցակ„, էջ 1001—1002։ Գիրքը քաղուածոյ Ժամագիրք մըն է, յետոյ հաւաքածոյ այլեւայլ տաղերու։ Պատարագն է ի Թ. 531 Թղ. 57ա—94ա։

մասեր կը պարունակեն, այսինքն Կարգ Դպրութեան եւ Մանրուսմունք, որոնց մասին ալ պէտք է այժմ քանի մը խօսք ըսել։

4. *Կարգ Դպրութեան եւ Մանրուսմունք*: Ձեռագիր պատարագամատոյցներն՝ ինչպէս տեսանք, տակաւին խիստ բաժանում չէին ըներ բուն Խորհրդատետրի եւ Սպասաւորութեան մէջ։ Այս բաժանումը տպագիրներէն կը սկսի որոշ ու հաստատուն կերպով. այսինքն՝ Խորհրդատետրին վերապահելով միայն քահանային աղօթքները, իսկ սարկաւագին եւ դպրաց մասերը թողլով ուրիշ գրքի։ Ձեռագիրք քիչ շատ խառն կամ մէկտեղ ունին այս ամէնը. սակայն նաեւ անոնք դուրս կը թողուն գոնէ քանի մը բաներ, գլխաւորաբար Մեղեդիք, Ժամամուտք, Սրբասացութիւնք, Ճաշու Մեսեդիք, Ալէլուք եւ Շարականք, որոնք պաշտաման ուրիշ մատեաններու մէջ ամփոփուած կ'ըլլան։

Մեր ձեռքն ունէինք համեմատելու համար, բացի վերը յիշուած I: եւ J ձեռագիրներէն, որոնք այս մասերն ալ մէկտեղ ունէին, տակաւին 10 ձեռագիր Կարգ Դպրութեան եւ 8 Մանրուսմունք կամ Խազգիրքեր։ Ստուգութեան արժանի է որ Կարգի Դպրութեան բոլոր ձեռագիրք ուշ ժամանակի են՝ ամէնն ալ ԺԷ: դարուն ըլլալով. մինչ Խազգիրքերը շատ աւելի հին են՝ մեծագոյն մասամբ ԺԴ եւ ԺԵ դարերէն ըլլալով՝ մաքուր գրչութեամբ եւ ծայրէ ծայր խազերով։

Սկսելով [illegible] կամ [illegible] մատեաններէ՝ ձեռքերնիս եղած 10 ձեռագիրներն ալ երկու խմբի կը վերածին. մին համեմատաբար ընդարձակ, միւսը՝ համառօտ։ Ընդարձակներուն բովանդակութիւնն է սովորաբար հետեւեալը. Ժամամուտներէն սկսելով մինչեւ Լցաք գրեթէ բոլոր սարկաւագի մեծ քարոզութիւնքն, Դպրաց Տաղերը, Հանգանակ, "Նա եւս հաւատով աղաչեսցուք„, Սրբասացութիւնք, "Նա եւս հաւատով եւ սրբութեամբ կացցուք„, "Ողջոյն տուք„ եւն, "Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ„ եւ յարակիցք, "Որք հաւատով կայք յանդիման„ եւն, "Ահիւ կացցուք„ եւ յարակիցք, "Նա զատոյգ„ եւն, "Սուրբ սուրբ„, "Հայր երկնաւոր„, "Ցամենայնի աւրհնեալ ես Տէր„, "Որդի Աստուծոյ„, "Հոգի Աստուծոյ որ զփառակցի„ եւն, քարոզութիւնքն "Առաքելոյ սրբոց„ եւ յարակիցք, "Գոհութիւն եւ փառաբանութիւն„, "Ամենայն սրբովք եւն. յետոյ "Հայր մեր„, "Քրիստոս պատարագեալ„ եւ յարակիցք, (Բշ. "Լոյս ճշմարիտ„ եւն եւն.) յետոյ Լցաք։ Ի հարկէ այլեւայլ ձեռագրաց մէջ կան աւելի եւ պակաս մասեր ալ թէ ասոնց եւ թէ համառօտներուն, ինչպէս նաեւ Խազգիրքերուն մէջ։ Լիակատար միօրինակութիւն կը պակսի առհասարակ ձեռագիր օրինակներուն։ — Համառօտներուն բովանդակութիւնն անով կը տարբերի նախընթացներէն, որ ասոնք քիչ շատ լիակատար ունին միայն Ժամամուտը, քարոզն "Նա եւս խղ. վասն խաղաղութեան„ եւն, Հանգանակ, քարոզն "Նա եւս հաւատով աղաչեսցուք.„ յետոյ սովորաբար քահանային զոյգ աղօթքները "Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս„ եւ "Խաղաղութեամբ քով Քրիստոս Փրկիչ մեր.„ ասկէ ետքը միայն մէկ երկու քաղուածք պատարագի վերջերէն։ Ստուգութեան արժանի է որ ինչպէս ձեռագիր Խորհրդատետրներուն, նոյնպէս ձեռագիր Սպասաւորութեանց եւ ոչ մէկը պատարագի վերջին աւետարանն ունի կամ կը նշանակէ։

Առաջին խմբէն կամ ընդարձակէն ձեռքերնիս ունինք եւ համեմատութեանց մէջ գործածած ենք սա ձեռագիրները. Թ. 69 (կամ a) մեծ բոլորգիր

գրչութեամբ ՌՃԺԱ (= 1662) թուին գրուած Թոխաթեցի Տաւներ սարկաւագէ՝ կ'երեւայ ի Սեբաթ.[1] — Թ. 158 (կամ b) պարզատումար եւ Կարգ դպրութեան լիակատար ՌՃԻԲ (= 1672—1681) թուին գրուած մեծ նօտրգրով, բայց ոչ գրիչն եւ ոչ գրչութեան տեղը ծանօթ.[2] — Թ. 411 (կամ e) մանր մաքուր նօտրգրով պարզատումար եւ Կարգ դպրութեան՝ գրուած ՌՃԺԸ (= 1669) թուին “ի մայրաքաղաքն Յիբերիայ„ Յարութիւն գրչէն.[3] — Թ. 426 (կամ g) մանր բոլորգրով Տօնացոյց ու աւետարանացոյց եւ պատարագի մասեր՝ ՌՁԲ (= 1633) թուին գրուած, բայց գրիչն ու գրչութեան տեղն անծանօթ. գիրքը կազմուած է Ալեփնացի Տէր Թումայէ.[4] — վերջապէս նաեւ Թ. 538 (կամ j), որ թէեւ Լեհաստան գրուած է՝ ՌՃԽԷ (= 1698) թուին Նազովցի Ստեփ. Փառախոյեց գրչէն ի Լով կամ Լէմպէրկ մեծ ու հաստ բոլորգրով, բայց նիւթին կազմութեամբը չի տարբերիր մեր Սովորական պատարագէն, ուստի ընդարձակ Կարգ դպրութեան մըն է Ժամագրքի մէջ իւր սովորական տեղը գրուած:[5]

Համառօտ խմբէն ունինք առջեւնիս. Թ. 393 (կամ c) բոլորգիր տօմար ու Ժամագիրք՝ ճուրճով գրուած ՌՃԼԹ (= 1690), բայց գրչին անունն ան-ծանօթ.[6] — Թ. 404 (կամ d) կանոնաւոր բոլորգրով Ժամագիրք ՌՃԶ (= 1657) թուին գրուած Պետրոս անուն անձէ, գրչութեան տեղն անծանօթ.[7] — Թ. 413 (կամ f) մանր բոլորգիր Ժամագիրք՝ իբր ԺԵ—ԺԶ դարուն գրուած, բայց ոչ որոշ թուականին, ոչ գրիչն եւ ոչ գրչութեան տեղը ծանօթ.[8] — Թ. 451 (կամ h) մեծ բոլորգրով Ժամագիրք՝ ՌՃԺԳ (= 1664) թուին Արապկեր գրուած Խաչատուր երիցուէն.[9] — վերջապէս Թ. 491 (կամ i) մեծ նօտրգրով Ժամագիրք ԺԷ—ԺԸ դարուն Լեհաստան գրուած, բայց գրիչն անծանօթ,[10] եւ նոյն միւս ձեռագիր Կարգ դպրութեանց հետ:

Ահա 10 ձեռագիրներ, որոնց ճիշդ կէսն ընդարձակ խմբի կը վերաբերի, այսինքն՝ abegj եւ միւս կէսը՝ համառօտ խմբին, որ է cdfhi: Առաջնոյն վրայ աւելցնելու ենք նաեւ I[2] եւ J ձեռագիրները: Բայց ի հարկէ ասով չի լմնար Սպասաւորութեանց շարքը նոյն իսկ մեր մատենադարանի մէջ. գրեթէ ամէն Ժամագիրք ունի այսպէս կամ այնպէս պատարագի մասերէն գոնէ մէկ քանին:

Որչափ ալ ասոնք երկու որոշ խմբի պատկանին, իրարմէ բաւական տար-բերութիւններ ունին: Շատ աւելի ընդարձակ է՝ օրինակի համար՝ Թ. 69 կամ a նշանակածնիս: Սկսելով Ժամամուտներէն կը կցէ Զգեստաւորման տաղն “Խորհուրդ խորին„ եւ ասոր՝ տաղ մ'[illegible], որ ուրիշ պաշտաման գիրքերու

[1] Տես ասոր մասին “Ցուցակ„, էջ 810—13, Սաղմոս, Ժամագիրք եւ Տաղարան: Պատարագի մասն է՝ թղ. 105բ—122ա:

[2] Թ. 158ի մասին տես “Ցուցակ„, էջ 462—63: Կարգ դպրութեանն է՝ թղ. 66բ—89ա:

[3] Թ. 411ի վրայ տես “Ցուցակ„, էջ 861-62: Պատարագի մասը՝ թղ. 75բ—103բ:

[4] Թ. 426ի մասին տես “Ցուցակ„, էջ 877—78: Կարգ դպրութեանն է՝ թղ. 197ա—206բ:

[5] Թ. 538ի մասին տես “Ցուցակ„, էջ 1010: Պատարագի մասն է՝ թղ. 143բ—186բ:

[6] Թ. 393ի վրայ տես “Ցուցակ„, էջ 845—46: Սպասաւորութիւնը՝ թղ. 255ա—270բ:

[7] Թ. 404 տես “Ցուցակ„, էջ 855—56: Պատարագն է՝ թղ. 128բ—137բ:

[8] Թ. 413 տես “Ցուցակ„, էջ 867: Պատարագի վերաբերող մասը (Ժամամուտք եւն) կը գտնուի՝ թղ. 128ա—149ա:

[9] Թ. 451 տես “Ցուցակ„, էջ 921—22: Կարգ դպրութեան՝ թղ. 60բ—70բ:

[10] Թ. 491 տես “Ցուցակ„, էջ 962—63: Սպասաւորութիւնը՝ թղ. 98ա—108ա:

*մէջ չենք գտներ,[1] յետոյ "Ընտրեալ„ եւ "Յայս յարկ„ եւն։ Լցաքէն յառաջ շարք մ՚ունի հաղորդութեան տաղերու. նախ կիրակի աւուր համար կը սահմանէ ըսել "Գառն Աստուծոյ որ բառնաս զմեղս„ եւն, յետոյ (Թղ. 120բ) "տէրունական տաւնից ասա. Որ է հնգից նշանակաց„ տաղը՝ բայց 8 տող միայն, ապա կցելով "դարձեալ տէրունական տաւնից ասա. Հայր երկնաւոր է ծեղ գնած„ եւն, եւ կը կնքուի շարքը "Մայր հաւատոյ„ տաղով, եւ ամէնէն վերջը կու գայ "Տեառն Ներսէսի ասացեալ. Աստուած անեղ„ կամ Հանգստեանքն, ինչպէս ունին ուրիշներն ալ։ — Թ. 158 կամ b նշանակածնիս նշանաւոր է այնու որ լիովին կը համընթանայ տպագրութեանց հետ, օրինակի համար Թրիեստի 1785 տարւոյ փոքրադիր լիակատար Սպասաւորութեան հետ, նոյն իսկ խորագիրներն եւ յատկապէս վերաբերութեան կարգը։ Թղ. 88էն ետքը թերի ըլլալով՝ Լցաքն եւ հետեւորդք կը պակսին, այնպէս որ Թղ. 89 կը սկսի "Գոչէր հրեշտակն„ տաղին վերջին տողերով։ Ասոր մէջ չկան սակայն Ժամամուտք, Ալէլուք եւ Մեսեդիք. մեղեդիներէն միայն "Ընտրեալն„, բայց արդէն յիշեալ 10 ձեռագիրներն ալ չունին Մեղեդիներն ամբողջ։ — Թ. 393 կամ c որ համառօտ խմբէն է, եզական կարգ մ՚ունի՝ միւսներէն տարբեր։ Ժամամուտներէն ետքը կու գան (Թղ. 262ա—բ) "Փոխք ճաշու ըստ պատշաճի„ եւ "Ալէլուք ճաշու„ միայն համառօտ նշանակուած, անկէ ետքը Հանգանակ եւն. ապա (Թղ. 267բ) կը կցուին՝ խորագրովս "Երգեցմունք պատարագի„՝ Սրբասացութիւնք եւ սարկաւագի մեծ քարոզութիւնք Յիշելեաց ժամանակ։ — Միւս համառօտներուն մասին՝ dfhi յատուկ նշանակելու բան մը չկայ. միայն f (կամ Թ. 413) ունի (Թղ. 145ա—149ա) քաղուածք մը ճաշու շարականաց, որ միւսներուն մէջ կը պակսի։ — Թ. 411 կամ e գրեթէ ճիշդ նոյն է bի հետ, ուստի նաեւ 1785ի տպագրութեան, միայն թէ "Սուրբ Աստուած„էն ետքը կը սկսի առանց Ժամամուտներն ալ ունենալու, այսպէս համառօտելով ամբողջը (Թղ. 75բ.) "[illegible]։ Զգեստաւորի քհն. եւ առագ սրգն. եւ ելանեն ի բեմն. եւ սրգն. կանգնի ի մէջ տաճարի, ձայնէ առ նա. Աւրհնեա տէր։ Եւ ժամարարն ի ձայն ասէ. Աւրհնեալ թագաւորութիւն Հօր, եւն։ Եւ ասեն Ժամամուտ։ Եւ ասեն զՍուրբ Աստուածն։ Զկնի Սուրբ Աստուածածին սրգն. գոչէ. Եւ եւս խղ.„ եւն։ — Նշանաւոր է ընդարձակներէն նաեւ Թ. 426 կամ g։ Միակ ձեռագիրն է այս տասն օրինակաց մէջ, որ խիստ որոշում եւ բաժանում ըրած է Սարկաւագի եւ Դպրաց մասերու, երկուքն ալ զատ զատ դնելով՝ առանց իրարու մէջ։ Ուստի նախ կը դնէ Դպրաց երգերը՝ (Թղ. 168ա) Ժամամուտք, (Թղ. 180բ) ճաշու մեսեդիք եւ ալէլուք, (Թղ 185ա) Սրբասացութիւնք, եւ (Թղ. 187—194) պատարագի մնացեալ տաղերը։ Անկէ ետքը միայն կու գան (Թղ. 197ա—206բ) սարկաւագի քարոզութիւնքն բոլոր պատարագի համար՝ Հանգանակէն սկսելով։ — Վերջապէս Թ. 538 կամ j Լեհաստան գրուածն այն տարբերութիւնն ունի որ պատարագի սկիզբն ("Յորժամ կամեսցի քհն.„ եւն) մինչեւ "ի յարկի սրբութեան„ ամբողջ ունի, ներփակելով միւս մասերովն ("Խորհուրդ խորին„, "Յայս յարկ„), յետոյ Ժամամուտք եւ Ճաշու սաղմոսք ընդարձակօրէն, եւ մնացածը յետոյ ի կարգին։ Վերացուցման*

---

[1] Թ. 69, Թղ. 111բ "Առաքել վարդապետի ասացեալ վասն զգեստ.։ Աստուածատեսըդ մարմնական, զգեցեալ եղեր կաւ սրբազան„ եւն. սկզբնատառք երկտողից կը կազմեն՝ "Առաքել վարդապետի ասացեալս է։„

“Քրիստոսի Ծնունդի„ աղօթքին ետքը (Թղ. 175բ—179բ) ունի սոսկ միայն՝ “Զկնի սուր [illegible] ըստ ձայնի աւուրն կիրակէի կարգաւ„ եւ միւս օրերու։

Սպասաւորութեանց ներքնոյն մասին այս ակնարկները բաւական կը համարինք։ Ինքնին կը հասկցուի որ մեր Սովորականին համեմատութեանց մէջ կարելի ալ չէր անոնց իւրաքանչիւրին ո՛ր մասն եւ ինչ համառօտութեամբ ունենալը մի առ մի նշանակել։ Միայն ուր որ անոնք ալ ունէին եւ տարբեր ընթերցուած կը ներկայացնէին՝ նշանակուած են։

Մանրուսմունք կամ Խազգիրք 7 հատ ունինք թուով առջեւնիս, ամէնն ալ՝ բաց ի երկուքէն՝ ԺԴ—ԺԵ դարէն, մաքուր գրչութեամբ եւ խազերով։ Այս կարգի գրոց՝ որ Ժամագրոց կցուրդներու հետ հաւաքում են, միջին մասը կը կազմեն միշտ պատարագի այլեւայլ կտորներ, այսինքն՝ Ժամամուտք, Ճաշու մեսեդիք եւ ալէլուք, Սրբասացութիւնք, յետոյ “Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ„ տաղէն սկսեալ մինչ “Լցաք„ դպրաց երգելի կարճ տաղիկները, ուստի նաեւ “Քրիստոս պատարագեալ„ եւ իւր յարակիցք։ Այս է ընդհանրապէս անոնց պատարագի մասը, ուստի գրեթէ նոյն՝ համառօտ Սպասաւորութեանց հետ. միայն հոս ամէն բան, նաեւ Ժամամուտք, խազերով են։

Համեմատութեանց մէջ գործածած ենք այս կարգի հետեւեալ ձեռագիրները. Թ. 183 (կամ k) մեծ ու թանձր բոլորգրով գրուած ՉՁԹ (= 1340) թուականին Մկրտիչ երիցու է, բայց գրչութեան տեղն անծանօթ, ընտիր օրինակ մը.[1] — Թ. 206 (կամ l) մեծ բոլորգրով՝ գրուած իբր ԺԴ—ԺԵ դարուն՝ Յովհաննէս գրչէն, գրուելու տեղն անծանօթ.[2] — Թ. 401 (կամ m) մաքուր բոլորգրով, գրիչն ու տեղն անծանօթ, իբր ԺԷ—ԺԸ դարէն.[3] — Թ. 403 (կամ n) մեծ բոլորգրով մաքուր մագաղաթի վրայ եւ գեղեցիկ ծաղկուած Աբրահամ աբեղայէն Բոլորաձորոյ անապատը ՋԼԳ (= 1484) թուականին.[4] — Թ. 419 (կամ o) մեծ բոլորգրով՝ Յովհաննէս գրչէն Սանահնի վանքը գրուած ՊՀ (= 1421) թուին.[5] — Թ. 423 (կամ p) բոլորգիր գրչութիւն Ստեփանոս եպիսկոպոսի՝ իբր ԺԴ—ԺԵ դարուն, բայց գրութեան տեղն անծանօթ.[6] — Թ. 432 (կամ q) մանր բոլորգրով մագաղաթի վրայ՝ ՌՂ (= 1642) թուին գրուած Բարղամ գրչէն ի Սեբաստիա։[7]

Այս ամէնն ալ գրեթէ նոյն բովանդակութիւն ունին, զոր վերը նշանակեցինք. քիչերը կը տարբերին մէկ երկու կէտի մէջ։ Թ. 183 “Քրիստոս պատարագեալ„ տաղին սա տնէն սկսեալ “Մատիք առ Տէր„՝ Շնորհալւոյ կ'ընծայէ, դնելով այս խորագիրը՝ “Երգ Տեառն Ներսէսի ի բաշխելն խորհրդոյ։„ Աւելի անսովոր է այն որ “Լցաք„ի յաջորդ տաղիկը (“Գոհանամք„) սա խորագիրն ունի հոն՝ “Ի պաշտօնէ Հայոց։„ — Թ. 401 կրկին մասով ունի, նախ Թղ. 19բ—22բ

[1] Թ. 183 տես “Ցուցակ„, էջ 499—500, պատարագի մասն՝ Թղ. 67բ—148բ։

[2] Թ. 206 տես “Ցուցակ„, էջ 529. պատարագի մասն՝ Թղ. 67ա—137բ։

[3] Թ. 401 տես “Ցուցակ„, էջ 853. պատարագը՝ Թղ. 19բ—22բ, 54ա—61բ, որմէ ետքը Հաղորդութեան մեծ տաղը կամ “Որ ի հնգից նկանակաց նշխարեցեր„ եւն։

[4] Թ. 403 տես “Ցուցակ„, էջ 855, պատարագը՝ Թղ. 7բ—134բ։

[5] Թ. 419 տես “Ցուցակ„, էջ 872—73. պատարագը՝ Թղ. 74ա—152բ։

[6] Թ. 423 տես “Ցուցակ„, էջ 875, պատարագը՝ Թղ. 71բ—179բ։

[7] Թ. 432 տես “Ցուցակ„, էջ 883—84. պատարագը՝ Թղ. 61բ—76բ։

*Սրբասացութիւնք եւ յետոյ շարունակուած՝ Թղ. 54ա “Ոյք հաւատով կայք յանդիման„ եւն։ Միւս ձեռագիրներուն բոլորովին անծանօթ է աստ “Հայր մեր„ ակրունականն անմիջապէս ետքը կցած խաղերով սա տաղը (Թղ. 57բ) “Սրկ. Աւրհնեա Տէր։ Ժող. Միաբան աղաչեսցուք զթագաւորըն մեր Քրիստոս, զի արժանի արասցէ ըզննջեցեալըն մեր մտանել ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն, առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Սրկ. Պռաւսխումէ։ Ժող. Միայն սուրբ„ եւն եւն։ “Քրիստոս պատարագեալ„ տաղին անմիջապէս կը կապուի առանց որեւէ բաժանման ուրիշ մ՚որուն այլեւայլ մասերն “Մայր հաւատոյ„ տաղէն են, բայց ուրոյն տներով ալ։[1] Վերջը կը կցէ (Թղ. 62ա եւն) տաղն “Որ ի հնգից նկանակին, նշխարեցեր հինգ հազարին„ եւն, որ ձեռագրիս մէջ չափազանց երկայն է կամ նոյն կարգի եւ նոյն յօրինուածով շարունակուած առանց բաժանման՝ մինչեւ Թղ. 93ա։ — Միւսները յատուկ բան մը չունին, բայց միայն զ կամ Թ. 432 որ ժամամուտները չունի, եւ “Լցաք-Գոհանամք„ տաղերէն ետքը (Թղ. 74բ) պատշաճ տեսեր է կցել “Ընտրեալ„ մեղեդին, յետոյ “Լոյս զուարթ„։*

*Թէ՛ Խազգրքերն եւ թէ՛ նաեւ Սպասաւորութիւնքն ու Խորհրդատետրները չունին մեղեդիները, բայց միայն “Ընտրեալ„ն, եւ այն՝ ոչ ամէնը։ Մեղեդեաց լիակատար հաւաքում մըն է Թ. 176 (կամ r) բոլորգիր ձեռագիրն իբր ԺԷ—ԺԸ դարէն, ուր քանի մը Գանձերէ եւ տաղերէ ետքը կը գտնուի կարգաւ (Թղ. 19ա—57բ) բազմաթիւ մեղեդիներու շարք մը, ի վերջոյ (Թղ. 58բ—60ա) “Ընտրեալ։„[2] Նոյն հաւաքում մը կայ նաեւ I² ձեռագրի Սպասաւորութեան մէջ. (Թղ. 39ա—45ա։) Նոյնները եւ ոմանք կրկնութեամբ՝ այլեւայլ ձեռքերէ գրուած՝ կան նաեւ Թ. 401 ձեռագրի վերջը. (Թղ. 110ա—131ա.) թող նաեւ ուրիշ աղբիւրները։ Մենք պէտք չտեսանք մեր պատարագի մատեանին մէջ առնուլ Մեղեդեաց ամբողջ այս հոյլը. բայց միայն անոնք՝ որ արդէն մուտք գտած են տպագիր Դպրութեանց մէջ ալ՝ պահեցինք նոյնպէս։*

5. *Լեհահայոց Պատարագը։ Ձեռագիր Պատարագամատոյցները ներկայացընելէն ետքն անհրաժեշտ է անյիշատակ չթողուլ խումբ մ՚ալ, որ՝ մեր Սովորականին վերաբերելով ալ յետկանս՝ շատ տեղ կը շեղի անկէ, յատկապէս Լեհահայոց եկեղեցական վարչութենէն փոփոխուած կամ սրբագրուած ըլլալով։ Այս խմբի ձեռագիրները չենք համեմատած մեր Սովորականին հետ, ուստի այն բազմակերպ այլափոխութիւնք նշանակուած չեն նոյն բնագրի ներքեւ ծանօթութեանց մէջ։ Այս պատճառաւ ալ չենք կրնար զանց ընել՝ հոս գոնէ գաղափար մը տալու Լեհահայոց Պատարագամատոյցին վրայ։*

---

[1] Աւելորդ չէ՝ եթէ օրինակ՝ յառաջ բերել այս կտորը. (Թղ. 59բ—61ա.) “Եկայք մարդիկ ամենայն, մատիք առ Տէր սրբութեամբ. ճաշակեցէք եւ տեսէք, զի քաղցր է Տէր սրբութեամբ։ Հացս այս մարմին Քրիստոսի. բաժակ արեան նոր ուխտի. ծածկեալ խորհուրդըն յայտնի. Աստուած ի մարմնի երեւի։ Որք անմաքուր էք հոգւով, ի բաց կացէք դողալով. զի հուր կիզիչ է բոցով՝ զհոգիս անարժան մարմնով։ Որք աղաւթիւքըն ճըգնեալ, տաճար Հոգւոյն զձեզ մաքրեալ. յառաջ մատիք ճաշակել՝ զմարմին եւ զարիւնն ըմպել։ Սա է Որդին Աստուծոյ, որ ընդ աջմէ Հաւր նըստի, եւ աստ միշտ պատարագեալ բառնա ըզմեղս աշխարհի։ Աստուածածին սրբուհի, յերկնից դըշխոյն պանծալի, միջնորդ լըներ Յիսուսի՝ ի ժամ սուրբ պատարագիս։ Զերեսս եդեալ ի հողի, հայցեմք ի քէն Թագուհի, մատոյ զաղերս մեր բանի՝ Որդւոյ քո Տեառն Յիսուսի։ Գարուն է մեզ հոգեւոր, եկայք մատիք բանաւոր. աղջըյն կուսին ջահաւոր՝ երգեաց հրեշտակն երկնաւոր։„

[2] Ասոր վրայ տես “Ցուցակ„, էջ 493։

Երբ Լեհահայոց սրբագրուած Խորհրդատետրի վրայ կը խօսինք, պէտք չէ խառնել զայն ոչ Բարսեղեան Բարսղի առաջարկած սրբագրութեանց հետ, եւ ոչ Հռոմայ 1677ի տպագրութեան, որ բնագրի վերանորոգութեան այն ձեռնարկներուն արդիւնքն եղաւ։ Անշուշտ նոյն իսկ Լեհահայք եղան պատճառ սրբագրութեան այն խնդիրներուն՝ որ Նիկողայոսի Թորոսովիչ օրովը արդէն սկսան։ Բայց Լեհահայոց եկեղեցին համամիտ չէր Բարսեղեանի հետ. եւ նոյն իսկ իրենց Վարդան Յունանեան եպիսկոպոսն էր որ Բարսեղ քահանայի ծայրայեղ ճգանց դէմ գրեց, որով անոր յօրինած եւ այնպէս թարգմանած Խորհրդատետրի տպագրութիւնը խափանուեցաւ։ Ստեփանոս Ռոշքա կը գրէ յիշելով Բարսղի ձեռնարկին մասին թէ «Սա եւ զխորհրդատետրն Հայոց ի լատին բառ դարձոյց՝ ոչ ճշգրտիւ»,[1] յայտնելով իւր ալ համամիտ չըլլալը։

Լեհահայք բոլորովին ուրիշ ճամբայ բռնած են Պատարագամատոյցի եւ ուրիշ պաշտաման գրեանց վերակազմութեան համար։ Ամէնէն լաւ օրինակն է անոր՝ իրենց ծիսարանը կամ Մաշտոցը, ծայրէ ծայր նոր թարգմանութիւն լատիններէնէ։ Խորհրդատետրն այսպիսի վիճակի չհասաւ. սակայն վերջ ի վերջոյ հասաւ յանգեաւ այնպիսի կերպարանքի մ'որ խառնուրդ մըն է մեր Սովորականին եւ Միսալին։ Բայց կանխենք ըսենք որ ոչ ամէն ձեռագիր Խորհրդատետր, որ Լեհաստան գրուած է, անպատճառ այս խմբին կը վերաբերի. ինչպէս արդէն քանի մը հատ տեսանք նախընթացներուն հետ. (J, c, j եւն։)

Միայն Ստեփանոս Ռոշքայի Ժամանակագրութենէն եւ իւր Նամակներէն[2] կրնանք որոշ գաղափար կազմել պաշտաման գրոց վերակազմութեան ընթացքին վրայ ի Լեհաստան։ Սկիզբն եղած է արդէն Նիկողայոսի Թորոսովիչ ժամանակ, գլխաւորաբար Յովհ. Քարմատանենց օգնական եպիսկոպոսին ձեռնարկութեամբ։ Անոր վրայ կը գրէ Ռոշքա 1671 տարւոյն մէջ (Թղ. 412բ.) «Յովհաննէս Քարմատանենց Լէօպոլսեցի եպ. սուֆրական. մինչ Նիկողայոս արքեպիսկոպոսն էր ի Հռոմ, կառավարէր զեկեղեցիս մեր. զբազում բարեկարգութիւնս արար, տրամադրեաց զՊատարագատետրն եւ զՄաշտոցն Հայոց, քաջ ուղղափառ. եղեւ ի Հռոմ. եւ զկնի աշխատանաց հանգեաւ ի Քրիստոս յամի Տեառն 1678։» Թէ ինչ կը հասկընար Ռոշքա «տրամադրել» ըսելով, յայտնի է մեր գրատան Թ. 502 ձեռագրէն (ծիսարան Լեհահայոց[3]). այսինքն՝ պարզապէս թարգմանութիւն լատինականէն։ Միայն թէ Խորհրդատետրն ալ ճիշդ այնպէս եղած չերեւար. գոնէ չունինք օրինակ մը Լեհահայոց՝ լատինականէն թարգմանուած Խորհրդատետրի։ Ընդհանրապէս Ռոշքայի տուած տեղեկութիւնքը մի առ մի կրնանք ճշդրտել Լեհահայոց բազմաթիւ ձեռագիրներովն ալ, որ այժմ մեր գրատունն են։

---

[1] Ժամանակագրութիւն (Թ. 266 մեր գրատան) Թղ. 417ա, ցամի 1693։

[2] Երկուքն ալ ամփոփուած Թ. 266ի մէջ, որուն վրայ ընդարձակ տեղեկութիւններ եւ քաղուածներ ալ տես «Ցուցակ», էջ 679—83։

[3] Համեմատելու է սա խօսքը «Ծիսարանն կամ արարողութիւնն այն որ վաղուց հետէ ձեռամբ ուրումն Յօհաննէս Քիւրամոնճիկ եպիսկոպոսի Պուզանդիոյ եւ սուֆրականի Լէօպոլսեցի Հայոց՝ թարգմանեցեալ էր ըստ ամենայնի գրեթէ օրհնութիւնս ի Լատինացւոց առ Հայս» եւն. տես «Ցուցակ», էջ 973։ Ռոշքա յետոյ (Թղ. 427ա) Վարդան Յունանեանի գրոց մէջ կը դնէ Ծիսարանի թարգմանութիւնն. ինչպէս նաեւ վերջապէս ինքն ալ սրբագրեց նոյնն՝ ըստ վկայութեան Յովհ. Ակուռտինովիչ արքեպիսկոպոսի, որոյ վրայ քիչ մ'ետքը։ Վասն զի Ծիսարանն եւ ուրիշ գրքերն ալ հետզհետէ սրբագրուած եւ փոփոխուած են, մինչեւ որ շատերն որոշ վիճակի մը հասան ընդունելի ըլլալով։

Այս միջոցին 1677ին էր որ լոյս տեսաւ Հռոմայ տպագրութիւնն՝ քանի մը սրբագրութիւններով։ Այս տպագրութիւնն անշուշտ Լեհաստան ալ ընդունելի եղած եւ գործածուած է։ Վկայ է ասոր՝ ի միջի այլոց՝ մեր գրատան Թ. 445 ձեռագիրն, ուր պարզապէս յիշեալ տպագրութիւնն առնուած կազմուած է ձեռագրին մէջ Խորհրդատետրի տեղ։[1] Բայց ասոր կը կցուի "Պատարագատետր" բաժին մ'ալ (Թղ. 14—37), որ՝ ճիշդ խօսելով՝ հաւաքում մըն է ճաշու ընթերցուածոց՝ ոչ ըստ հայկականին, ունենալով ի վերջոյ Միսալէն ալ մասեր. — աւելի եւս Թ. 445, Բ՝ որ է "Պատարագք հաւաքեալք ի Միսալէն վասն առընթեր գոլոյ ի հարկաւորութեան," քանի մը կտոր բան։ Իսկ Թ. 445, Գ Լեհահայոց յատուկ պատարագն է, այնպէս՝ ինչպէս կայ նաեւ Թ. 435 եւ 438 ձեռագրաց մէջ։

Հռոմայ տպագրութեամբ դադար չէ առած Խորհրդատետրի փոփոխութիւնն, եւ ոչ ալ Վարդան Յունանեանի յատուկ տպարան մը գործածելու ճգանց ալ տեսական արդիւնք չունենալով։[2] Ընդհակառակն 1689ին (ըստ Ռոշքայ, Թղ. 417ա) "սինհոդոս արարին մերայինքս ի Լէօպոլիս, Հոկտեմ. 10, վերակացու գոլով Գեր. Տ. Ունցիոն Կանդէլմի եւ Վարդան արքեպիսկոպոսի, վասն ուղղագրելոյ եւ տպագրելոյ զՊատարագատետրն, եւն, որոյ աղագաւ առաքեցաւ ի Հռոմ Աստուածատուր եպիսկոպոսն Սերոբեան։" Կը կարծենք որ այս սինհոդոսի սրբագրութեանց արդիւնք է Լեհահայոց Պատարագամատուցի այն ձեւերէն մին, զոր ունինք Թ. 435, 438 եւ 445 ձեռագրաց մէջ։ Յամենայն դէպս սրբագրեալ կամ խառնուրդ ձեւը կը տեսնենք որ գործածութեան մտած էր, թէեւ Ներսէսեանի ուղեւորութիւնն ի Հռոմ եւ եօթը տարի հոն մնալով աշխատիլն հաստատել եւ տպագրել տալու՝ ի դերեւ ելած էր, ինչպէս կը վկայէ նոյն Ռոշքա։[3] Այս անյաջողութեամբ ալ դադար չէ առած գրքերու սրբագրութիւնն, որուն մասնակցած են Լէօպոլսոյ գրեթէ ամէն եպիսկոպոսունքը կարգաւ։ Վարդան Յունանեանի վաստակոց հետեւեալ ցանկը կը դնէ նոյն ժամանակագիրն (Թղ. 427ա, ցամն 1715) "Վարդան Յունանեան. եւ սա էր խոհեմ, խորագէտ, աղքատասէր եւ անպարապ ի գրելոյ եւ ի թարգմանելոյ։ Թարգմանեաց զԲրեւիարն եւ զՊոնտիֆիկալն (Pontificale) հռոմէական, (— զոր չունինք առձեռն —), Սերմոնք տօնականաց,[4] (— այս եւ յա-

[1] Ձեռագրիս մասին տես "Ցուցակ", էջ 917—18։

[2] Ժամկգր. Թղ. 416 (ցամն 1686) կ'ըսուի թէ Վարդան Յունանեան առնելով "ի Սուրբ Ժողովոյն զհրաման սկսաւ, վասն զի ոչ էր առեալ իբրեւ եպիսկոպոս ընդ ամս տասն. որովք զտիպ գեղեցիկ կարգեաց, զոր յափշտակելով յետոյ Շվեդացն, խափանեցաւ գործ նորա։"

[3] Անդ, Թղ. 424ա (ցամն 1709.) "Տէր Աստուածատուր վարդապետ Ներսէսեան (†1709, մայիսի 9)... իբրեւ Վարդան արքեպն. արար զսինհոդոս յամի 1689 վասն բարւոք կարգելոյ զեկեղեցական խորհուրդս եւ սրբագրելոյ զգրեանս, կոչի Աստուածատուր եպն. ի Հռոմ վասն յարդարելոյ եւ տպելոյ զխորհրդատետրն. Հայոց 1691, ուր մնացեալ զամս եօթն՝ զոչինչ կարաց առնել յաղագս դժուարութեանց ոմանց։ Վարդանայ տկարացելոյ եւ պատճառելոյ զանկարութիւն իւր, ընտրի Աստուածատուր յաջորդ նորին, եւ յամի 1698 եկեալ ի Լէօպոլիս առնու զառաջնորդութիւն թեմի նորին. յորում զկարգաւորութիւնս յոլովս արարեալ... զտօն մարմնոյ Տեառն հաստատեաց...։ Թողեալ իւր յիշատակ զգիրս մի քարոզից Լեհական բարբառով, իսկ հայերէն զծանօթութիւն Բարոյական Աստուածաբանութեան, զԱրդարացութիւն եկեղեցւոյն Հայոց, եւ զԲառագիրքն։" Թ. 502 Ծիսարանի յիշատակարանը տես ի "Ցուցակ", էջ 973։

[4] Օրինակ մը տես մեր մատենադարանի Թ. 501 ձեռագրի մէջ (թարգմանուած 1677ին). ուր կայ նաեւ թարգմանութիւն Պոնայի "Ցղ. Սրբազնութեան պատարագի" գործքին՝ հայերէնի

Ջորդքն ունինք մեր գրատունը —), Պաշտօն—Լէհ—Նօ Պատարագչին,[1] Ծիսարան,[2] Գանձարան Աղօթից,[3] եւն։ Գրեաց եւ ԸնդՀանրական Խօսքն առ Նկլո-կրացիս»[4] եւն։ Քիչ մ՚ետքն 1718ին էր որ Յովհ. Աւկուստինովիչ արքեպ. ժողով գումարեց, այս անգամ յատկապէս «վասն տպագրելոյ զՏօնացոյցն մեր ըստ Յայսմաւուրացն»․ որուն գլխաւոր աշխատողներէն էր նոյն ինքն Ստեփ. Ռոշքա։[5] Տօնացուցի հետ խնդրոյ գլխաւոր նիւթն էր նաեւ դարձեալ Մաշտոցը․ եւ այս երկուքը շատ յաճախ առիթ տուած է Ռոշքայի Նամակագրութեանց, որոնցմէ կ՚իմանանք Լեհահայոց ջանքը նոյները Հռոմայ ընդունելի ընելու եւ տպագրել տալու նաեւ ի Վենետիկ։[6] Այս ջանքերը յաջողած չեն երեւար գոնէ ամէն մասամբ․ բայց արդէն 1728ին Աւկուստինովիչ պաշտօնապէս հրամայեց Լեհահայոց գործածել միայն յիշեալ Մաշտոցը։[7]

Սակայն այս միջոցին միւս գրքերու խնդիրն ալ չէր դադրած։ Նոյն Ռոշքայի թղթերուն մէջ հատ մ՚ալ կայ սա խորագրով «Իմ վկայութիւն pro missali» եւ այն 1725 տարիէն (Թղ. 445բ), ուր կը վկայէ Խորհրդատետրի մը սրբուած ըլլալուն ամէն սխալներէ եւ ըստ այնմ տպագրութեան արժանի համարելուն։ Նամակաց մէջ դարձեալ կը յիշէ նոյնը Կանոնագրքի մ՚ալ յարդարելու ձեռնարկելը. (տես «Ցուցակ» էջ 683.) եւ առ Խաչատուր Արք. ուղղուած Նամակ

---

փոխադրուած 1698ին։ Յունաներէնի թարգմանածն է Պոնայի «Զերբածութիւն յերկինս» գործքն ալ, տես Թ. 263ի մէջ, եւն։ Հայրապետականէն օրինակ մը չունինք մեր քով. սակայն հմմտ. մեր գրատան Թ. 51 ձեռագիրն Եպիսկոպոսի եւն ձեռնադրութեան՝ 1645ին Լեհաստան գրուած, որուն վերջը կայ նաեւ լատիներէն-հայատառ ձեռնադրութիւն եպիսկոպոսի։ Իսկ Քրիստոնէականներ շատ կան մեր հաւաքման մէջ, բայց ոչ յատուկ Հռոմէական «Քաթէխիզմ»։

[1] Հմմտ. «Յղ. պակասութեանց որք հանդիպին ի մատուցման սրբազնասուրբ պատարագին»՝ Թ. 501,[3], նոյնպէս Թ. 492ի մէջ «Խորհուրդ պատարագի.» առանց անուան թարգմանչին։

[2] Տես յիշեալ Թ. 502ի յիշատակարանն, ուր Վարդանայ գործունէութիւնն ալ անյիշատակ թողուած չէ։

[3] Հաւաքումն աղօթից եւ հոգեւոր երգերու՝ ութ գրքով, թարգմանուած 1701ին. օրինակ մը՝ Թ. 512 ձեռագիրը։

[4] Ասոր վրայ մանրամասն տես մեր գրատան Թ. 12 («Ցուցակ» էջ 107—16) եւ Թ. 37։

[5] Ժամնկգր. Թղ. 429ա (յամ 1719.) «Յովհաննէս Աւկուստինովիչ արքեպս. մեր, որ յանցեալ ամի 1718 գժողով արար քահանայից թեմի իւրոյ վասն տպագրելոյ զՏօնացոյցն մեր ըստ Յայսմաւուրացն, (զոր եւ ընդ այլովքն շարադրեաց, եւ զծանուցումն որպէս Հայոց՝ որք ի նմին գաւառին, լատիներէն արարի,) յայսմ ամի երթայ ի Հռոմ հաստատել զայսոսիկ, ուր սիրով ընկալեալ» եւն։

[6] Հմմտ. Նամակ առ Խաչատուր Արք. 1730 Դեկտ. 6 (Թղ. 440ա) ուր կը ծանուցանէ թէ յիշեալ Ծիսարան արդէն կը գործածուէր Լեհահայոց եւ Հունգարահայոց մէջ. (իւր խօսքերն են՝ Rituale auctoritate... Archiepiscopi Nostri approbatum, quo nos in Polonia et Transylvania utimur), զոր տպագրել տալ խոստացած էր Պետրոս Քէլէճեան։ Նոյն խնդրոյ առթիւ գրուած է Նամակն առ Ստեփ. Շահրիման 1730ին (Թղ. 441ա) եւ երկրորդ մ՚առ Պետրոս Քէլէճեան (անդ) եւ երրորդ մ՚առ «Հայր Էմմանուէլ Միզաշֆալով» (Թղ. 441բ), երեքն ալ 1730ին։ Կայ նաեւ խնդրագիր մը Հունգարահայոց եւ ուրիշ մը Լեհահայոց (Թղ. 445ա—բ), երկուքն ալ 731ին։

[7] Հրամանագիրը տես առ Հ. Գր. Գովրիկեան, «Տրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը» եւն, Վիեննա 1896, էջ 253—54։ Ասոր մէջ կ՚ըսուի ի միջի այլոց՝ «Զոր ի ձեռն աստուածաբանից մերոց, եւս առաւել պատուելի Տեառն Ստեփաննոսի Ստեփանեան աստուածաբանութեան վարդապետին, զհին ձեռագիր Մաշտոցս ընդ միմեանս բաղդատելով. եւ իբր՝ զանհուն սխալանաց, որք ոչ միայն ընդդէմ խնայման աղօթիցն, այլեւ ընդդէմ իսկ ուղղափառ հաւատոյ մերում սփռեալք էին, ուղղագրել եւ զսրբագրեալն կարգաւ յօրինել... եւ որ ինչ պակաս էր ի Մաշտոցն՝ ի Հռոմէականէն... առեալ տպագրել ջանացաք» եւն։ Հրամանագրին տարեթիւն է՝ «յամի Տեառն 1728, ապրիլի ամսոյ ԺԵ։»

*մը 1730 տարւոյ Դեկտ. 6ին կը ծանուցանէ Ցայսմաւուրաց սրբագրութիւն մը. (տես "Ցուցակ", էջ 681։) Այսպիսի օրինակ մ'ալ կայ մեր գրատան մէջ՝ Թ. 437, որուն վրայ կը տեսնուի սրբագրութեանց չափը։*[1] *Սրբագրեալ Ժամագիրք մը նոյնպէս ունինք, եւ այն՝ Ցակոբայ Աւկուստինովիչ եպիսկոպոսի ձեռքէն 1716ին գրուած, ուր Առաւօտեան ժամէն ետքը խումբ մը նոր երգեր մուծուած են,*[2] *եւն։ Բնական է որ ոչ ամէնքը համամիտ էին մասնեաց վերակազմութեան այս հոսանքին, մանաւանդ սկիզբները։ Նոյն Բոշքա է որ առ Աբրահամ կթղ. գրած նամակին մէջ (1736, մարտ 10) կը գանգատի այս առթիւ պատահած գայթակղալից դիպուածոյ մը վրայ՝ գրելով (Թղ. 451ա.) "Բայց լուեալ ոչ կարեմ զանօրէն սպասն Կիրակոս վարդապետին, որ երկու ամօք յառաջ ի Սեչով քաղաքին ի մէջ եկեղեցւոյն առաջի ժողովրդեանն զխոսհըր-ղոփէփըն մի ծիւ ծիւ արարեալ այրեաց, եւ կոխեաց զգլուխ քահանայի միոյ ծեծեաց։" Այն Խորհրդատետրն անշուշտ Լեհահայոց փոփոխեալ օրինակներէն էր։*

*Վերջիններէս մեր գրատունը կան գլխաւորաբար չորս օրինակ, բաց ի պակասորդներէ (համ. Թ. 436, Ա. 442, Ա.) եւ նոյն կարգի ձեռագիրներէ, ինչպէս է՝ Թ. 458 "Ցանկ պատարագաց" տիտղոսով, բուն՝ Աւետարանացոյց։*[3] *Այս չորս են Թ. 435, 438, 445, եւ 448,*[4] *ամէնն ալ նոր խմբագրեալ օրինակներ, բայց պէսպէս աստիճանաւորութեամբ։ Օրինակի համար Թ. 435 հնագոյն խմբագրութիւն մը կը ցուցնէ. վասն զի ընդունած ալ ըլլալով Լեհահայոց յատուկ յաւելուածները՝ գրեթէ ամէն տեղ զերծ է Հռոմի 1677ի սրբագրեալ ընթերցուածներէն եւ համաձայն հին ձեռագրաց. մինչդեռ Թ. 438 Փառախովիչի օրինակը թէ՛ յաւելուածներն ունի եւ թէ՛ սրբագրութիւններն ընդունած։ Մանրամասնութեանց մէջ ալ բաւական շատ տարբերութիւններ կան։ Վերջապէս թէ այժմ ինչ կերպարանք ունի Լեհահայոց Խորհրդատետրը, կրնայ տեսնուիլ անոր պաշտօնական տպագրութենէն. (Վիեննա 1885, մեծ 4° էջք 35։) Տպագիրը միայն Խորհրդատետրը կը պարունակէ, մինչդեռ ձեռագիրքն նաեւ Ճաշոց՝ լատինական Միսալին պէս դասաւորուած եւ յաճախ անոր նմանցուած, ընդհանրապէս տարբերելով հայկականէն։ Մեր Սովորականէն զարտուղութեանց մէջ ձեռագիրքն ալ ընդհանրապէս կը նոյնանան տպագրութեան հետ. բայց նաեւ երբեմն մեծ շեղում կը ցուցնեն։ Թ. 435 եւ աւելի Թ. 438 օրինակի համար շատ յոռի լեզուաւ նոր կտորներ ունին Զգեստաւորման մասին մէջ, մինչ տպագիրը պահած է հոս մեր Սովորականին ընթերցուածները։ Խրատագիրները բոլորովին նոր են ամէնուն մէջն ալ, եւ այնպէս՝ որ ար-տաքին արտադրութիւնք աւելի մերձաւոր եղած են լատինականին։ Բնագիրը՝ քիչ անգամ ի բաց առնելով նոյն է Սովորականին հետ, միայն յաճախ եւ երբեմն մեծ յաւելուածներ առած է, ոմանք Միաբանողաց Միսալէն։ Աչքի կը զարնէ երբեմն աղօթից տեղափոխութիւնն. օրինակի համար "Որ հաստատակաց*

---

[1] Տես "Ցուցակ", էջ 896—902։ Բուն ձեռագիրը գրուած է ՌԾԲ (= 1603) թուին Ղազար գրչէն ի Լով կամ Լէմպէրկ։

[2] Տես Թ. 508 եւ անոր վրայ "Ցուցակ", էջ 980։

[3] Տես "Ցուցակ", էջ 935։

[4] Անոնց իւրաքանչիւրին մասին տես "Ցուցակ", էջ 886, 902—903, 917—18 եւ 918—20։ Միայն Թ. 438 գրութեան թուական ունի՝ 1723ին գրուած ըլլալով Քրիստափոր Ֆառախեանցէ ի Լէոպոլիս։

*զայս» աղօթքը տպուած գրուած է «Հայր մեր»էն ետքը։ Արդէն ուէրունական աղօթքէն մինչեւ ճաշակման վերջը շատ ու շատ կը տարբերի Լեհահայոց խորհրդատետրին, որուն ամէն մէկ շեղումները նշանակել մեր նպատակէն դուրս է։ Աւելորդ է կրկնել որ այս ամէնը չէինք կրնար գործածել մեր Սովորականին համեմատութեանց մէջ. ուստի շատացանք Լեհահայոց պատարագի մասին այստեղ խօսելով։*

6. *Տպագիրք եւ ուրիշ տեղեկութիւնք:* *Հայոց Պատարագամատոյցի լիակատար միօրինակութիւնն, որմէ զուրկ են ձեռագիրները մինչեւ ԺԷ դարուն անգամ, մասամբ գտած է միայն տպագրութեամբ։ ԺԷ դարէն ետքն ըստ այսմ մեր Խորհրդատետրն առած է այժմու հաստատուն եւ միաձեւ կերպարանքը։ Թէեւ տպագիրքն ալ երկու խմբի կը բաժնուին բովանդակութեան ուղղութեան կողմանէ, բայց այս խտիրը մեծ չէ. ուստի կաթողիկէ եւ ոչ-կաթողիկէ Հայոց պատարագն այնպէս չի տարբերիր իրարմէ, ինչպէս կարծեցին եւ կը կարծեն տակաւին շատերը։*[1]

*Առաջին տպագրութիւնն եղած է Հռոմ* 1642*ին սա խորագրով «Կարգեալ սուրբ խորհրդոյ պատարագի Հայոց,* Ordo divinae Missae Armenorum» (*Հռոմ, տպ. Ս. Ժող.* 1642, 8° *էջք* 132 *հայ.-լատ. ըստ Պրայթմանի նոյնը տպուած է նաեւ* 1670*ին։) Այս գիրքը՝ որ Խորհրդատետր եւ Կարգ գրութեան միանգամայն էր, ամենեւին ազդեցութիւն չունեցաւ. վասն զի շատ այլակերպ կերպարանաց մէջ մտած է հոն Հայոց պատարագը. ուստի մեկդի դրուած է։ Եթէ հոս եւրոպական քննիչներու վկայութեան վրայ հաստատել էր տպագրութիւնը,*[2] *յաջորդը* 1677*ին՝ որ շատ մեծ ազդեցութիւն ունեցած է եւ քիչ շատ հիմն եղած ամէն տպագրութեանց, հայազգի Բարսեղ Բարսեղեանի թարգմանութեամբն եւ ջանիւքն առած է իւր արդի ձեւը։ Որչափ ալ Բարսեղեանի տպագրական ուղղագրութիւնքն ընդունելի չեղան եւ մնացին առանց հետեւանաց, գոնէ մեղմացած, ճշդիւ եւս քանի մը ուղղագրութիւններով, լոյս տեսաւ Բարսեղեանի* († 1693) *Հռոմ գալէն* 7 *տարի վերջը սա խորագրով* «**Խորհրդատետր** *Պատարագին Հայոց.* Liturgia Armena» (Romae, typis S. Congr. de Prop. Fide 1677, 4° *էջք* 20 *երկսիւն*), *սոր հետ՝* «**Սպասաւորութիւն** *Պատարագի.* Ministerium Missae» (*Հռոմ* 1677, 4° *էջք* 21—39.) *կցելով ի վերջոյ Ուղղագրութիւնքն Ժամագրքի ու Պատարագի եւ Տարակնոցի.* (*էջք* 41—50։) *Առջեւս ունիմ նոյն ճակատով եւ թուականաւ* (1677) *բայց աւելի փոքրադիր եւ տարբեր տառերով՝ Սպասաւորութիւնն հանդերձ*

---

[1] Այսպէս է մէջի այլոց Daniel, Cod. lit. IV, 451. բայց իրաւամբք երկու խմբի մատենախօսութիւնքն զատ զատ կը դնէ Brightman, Liturgies etc. I, p. XCVI—CI. Շատ յարգի են գիտնականիս այս մասին տուած տեղեկութիւնքն։ Բազմաթիւ տպագրութիւնք եւ թարգմանութիւնք կը նշանակուին հոն, որ այլուր դիւրաւ չեն գտնուիր։ Աղքատ է այս մասին «Մատենագիտութիւն», էջ 278—83։

[2] Հմմտ. ակերը գրուած վկայութիւնքս. «Հայոց Պատարագի Խորհուրդս այս Լատին լեզուով գրեալ ինձ յանձնեցին սուրբ ժողովքս Տարածելոյ. վասն օգտութեան Հայոց ազգի. եւ ես Վիկենտիոս մակ անուամբ Ոսկեփորիկոս նորին սուրբ ժողովոյն հրամանաւ առեալ տեսի եւ ուղղագրեցի։ Կազմեցաւ Ռոմա թվ. ՌՂԱ», (լատիներէնին մէջ թուականն է՝ 6 Մայիս 1636։) Միւսն է՝ հայերէն եւ իտալերէն՝ «Ես Յովհաննէս Մոլինոյ (Giovanni Molino) թարգմանիչ Հայոց, զգիրքս զայս հայի եւ լաթինի լեզուով գրեալ տեսի եւ կարդացի. եւ վկայեմ վասն ճշմարտութեան, զի ամենեւին հաւասար են միմեանց բառի եւ տողիք»։ — Բայց պարզ համեմատութիւն մը կը ցուցընէ որ լատիներէնը շատ յաճախ բոլորովին կը խոտորի հայերէնէն, եւ առհասարակ ազատ թարգմանութեան երեւոյթ ունի։

Սրբագրութեամբք. (փոքր 4° էջք 1—30։)[1] Երկուքն ալ միայն հայերէն են, որչափ ճակատն երկլեզուեան. բայց նոյն տարին տպուած է նաեւ հայ.-լատ. բնագիրն խորագրով՝ Codex mysterii missae Armenorum seu Liturgia armena (Հռոմ 1677։) Գրայթման կը յիշէ նաեւ տպագրութիւն մը Հռոմայ 1686ին։ Անկէ ետքը Վենետիկոյ մէջ 1690ին հրատարակեց Բարսեղեանի համախոհ ընկերը Յովհ. Վրդ. Կ. Պոլսեցի հայերէնն իւր իտալերէն թարգմանութեան հետ։[2]

Հռոմայ տպագրութիւնն հիմն եղաւ նախ Վենետիկոյ, Թիֆլիսի եւ Վիեննայի բազմաթիւ տպագրութեանց, որոնց ոմանց մէջ Բարսեղեանի սրբագրութեանց մէկ քանին՝ որ հայերէն լեզուի համար ամէնէն աւելի անհեթեթ էին, դարմանուած են արդէն։ Խորհրդատետրի այս տպագրութեանց գրեթէ ամէնը ճակատի վրայ կը կրեն "ըստ օրինակին տպելոյ ի Հռոմ" ծանուցումը։ Այսպէս է Մխիթար Աբբահօր խնամովք եղած տպագրութիւնն ի Վենետիկ 1741. (Վենետ. տպ. Անտոնի Բոռթոլի, 4° էջք 28։) "Խորհրդատետր սրբոյ Պատարագին" տպուած է դարձեալ Վենետիկ 1809 ("յերկուս գիրս, ի քառածալ եւ յութածալ.") դարձեալ 1823 (4° էջք 36) եւ նոյնպէս մեծադիր՝ 1874։ Բոլորովին լիակատար է "Խորհրդատետր սրբոյ պատարագին եւ Կարգ դպրութեան Հայաստանեայց եկեղեցւոյ" ի միասին բերուած եւ հանդերձ յաւելուածով ճաշու սաղմոսաց, շարականաց, տաղերու եւն՝ Վենետիկ. 1826. (8° էջք 111) որ նաեւ պաշտաման 6 նկարներով պատարագի զարդարուած է։[3] Ճիշդ նոյն բնագիրը եւ նկարները, բայց առանց յաւելուածներու, ունի "Պատարագամատոյց Հայոց, Liturgia Armena", հայերէն բնագիր եւ իտալերէն թարգմանութիւն Հ. Գ. Աւետիքեան. (Վենետ. 1827, Բ տպ. 1832, 8° էջք 125. դարձեալ 1854 եւ 1891. իտալերէնը միայն նաեւ՝ 1873 եւ 1892։) Նոյնպէս "ըստ օրինակին տպելոյ ի Հռոմ" է Խորհրդատետրի տպագրութիւնն ի Թիֆլիս 1803 (4° էջք 40) եւ Վիեննա 1858 (8° էջք 64) հանդերձ ցանկով ճաշու ընթերցուածոց բոլոր տարւոյն ամէն օրերուն համար. — 1879 տարին լոյս տեսաւ Կ. Պոլսոյ կաթուղիկեայ Հայոց Պատրիարքարանի Խորհրդատետրն եւ Ճաշոցն ի միասին՝ առ ի փորձ, բոլորովին տարբեր խրատագիրներով։[4]

---

[1] "Մատենագիտ." էջ 276 կ'ըսէ "Ա.յլ տպ. ի Հռոմ, նոյն մակագրութեամբ ճակատու եւ թուականաւ, բայց ժամանակաւ կրտսերագոյն, ի ձեռն Գէորգեայ Հորդոգեան Պաղտասարեան։"

[2] "Թարգմանութիւն իտալական սրբազանի Խորհրդատետրին Հայոց, շարագրեցեալ ի Յոհաննիսէ Վրդ. Կ. Պոլսեցւոյ ըստ խնդրոյ մերայնոց հայկազունեացն որք են ի Վենետիկ քաղաքի. յամի Տեառն 1690, ի 10 փետրվարի։" Իտալերէն խորագիրն է՝ „La Dichiaratione della Liturgia Armena fatta in italiano dal M. R. D. Giovanni Agop, Missionario Apostolico ... In Venetia MDCXC, apresso Michiel' Angelo Barboni" եւն։

[3] Գրայթման կը նշանակէ ի Վենետիկ տպուած Liturgia Armena cum imaginibus, 1823 (two edd. 4° and 8°, arm. and lat.) Վենետկոյ Հայոց եւրոպական ցուցակը (Catalogue, Venise 1884) կը նշանակէ Liturgie arménienne avec grav. in-4, Venise 1823, 1875.

[4] "Խորհրդատետր սրբոյ Պատարագին ըստ արարողութեան Հայաստանեայց եկեղեցւոյ." Վիեննա 1879, ճաշոցը կամ աւուր ճաշուք բաժնուած բոլոր տարւոյ վրայ՝ մեծ 4° էջք 388, մէջը Խորհրդատետր՝ 4° էջք 36, նոյն կազմութեամբ (մէկ երկու կէտ ի բաց առեալ) Վիեննայի 1858ի տպագրութեան հետ. բայց խրատագիրք ծայրէ ծայր նոր յօրինուած եւ արտաքին արարողութիւնքն ըստ այժմ բաւական տարբեր կերպարանօք. սկիզբը (էջ 1—12) ընդարձակ "Կանոնագրութիւն Թիւ Պատարագի" մեկնաբանութեամբք պահելի արարողութեանց։ Ամբողջն առ ի փորձ տպուած է, ինչպէս գրքին սկիզբը դրուած "Յայտարարութիւնը" կը ցուցնէ, որուն ստորագրած է Անտոն Պետրոս Թ. "ի կաթուղիկոսարանի Հայոց Ուղղափառաց, ի

*Երկրորդ խումբն (— Հնագոյն 1513 ի տպագրին վրայ տես էջ 613. —) իրեն հիմն ունի առաջին տպագրութիւնն 1686ի, որուն խորագիրն է. "Խորհրդատետր սրբազան պատարագի ըստ արարողութեան եկեղեցեացն Հայաստանեաց, տպագրեցեալ ի նորակերտ տպարանի Ճուղայեցի խօճայ Սահրատենց տանն Շահրիմանեան... ի թուականութեան արամեան ՌՃԼԵ, յամսեանն յունվարի ԺԲ. իսկ ի թուի փրկչին 1686, ի Վանատիկ քաղաքի. արդեամբք եւ գոյիւք Պրն. Գասպարին." (4° էջք 40։) Հրատարակիչը ծանօթ է, որ վերջին էջին վրայ դրած է յիշատակութիւն "մատակարարի գործարանիս Խաչիկեան Էրէցու Ալէքսանդրեանցոյ", առանց որեւէ տեղեկութեան գործածած գաղափարին մասին։ Գիրքը կ՚աւարտի տպարանի անուամբս* „In Venetia, MDCLXXXVI, Per Giacomo Moretti" *եւն։ Երկրորդ տպագրութիւնը "ի թվին փրկչին ՌՒԾՁ եւ ի թվ. Արամեան ՌՃԾԵ* (= 1706), *յամսեանն օգոստոսի, տպագրեցեալ ի նորակերտ տպարանի Գրիգորի դպրի Մարզուանեցւոյ ի մայրաքաղաքն Կ. Պոլիս"* (*Կ. Պ.* 1706, *փոքր* 4° *էջք* 43) *միջին բան մըն է, մասամբ առաջին եւ մասամբ երկրորդ խմբին համաձայնելով։ Խորհրդատետրը տպուած է դարձեալ Կ. Պոլիս "ի թուի փրկչին* 1748, *ի տպարանի Մարտիրոս դպրի."* 1787*ին կամ "ի թվ. Հայոց ՌՄԼԶ, յուլիսի ԻԱ, ի տպարանի Յօհաննիսի եւ Պօղոսի, ի Կ. Պ. քաղաքի"* (*մեծ* 4° *էջք* 36), *զոր՝ ըստ յիշատակարանին՝ Երուսաղեմայ Յովակիմ պատրիարքը տպագրել տուած է "յարմարաձեւ եւ նորակերտ տառիւք", եւ "կերտող նորաշէն տառիցս" է յիշեալ տիրացու Պօղոս՝ որդի Յովհաննիսի տպողի։ Կ. Պոլիս տպագրութիւն եղած է դարձեալ* 1823, 1844, *եւն։ Զմիւռնիա մէկ տպագրութիւն կը յիշուի "ի թվ. Արամեան ՌՄԺ, յամսեանն դեկտեմբերի ԺԲ, իսկ ի թուի Փրկչին* 1761, *ի քաղաքն ի Զմիւռին, ի տպարանի մահտեսի Մարկոսի." նոյնպէս հատ մը Նոր-Նախիջեւան "յամի Տեառն* 1794, *մայիսի* 10, *տպագրեալ ի տպարանի եւ արդեամբք հիւսիսաբնակ ազգին Հայոց Առաջնորդ Տեառն Յովսեփայ Պատկազզեաց սրբազան արքեպիսկոպոսի, ի Սուրբ Խաչ վանքս որ ի Նորն Նախիջեւան։" Բաց ի Էջմիածնի*

Բերա Կ. Պոլսի, ի 6 Յունուարի 1879։" Ըստ Յայտարարութեան "յամին 1847, որպէս եւ յետոյ եւս, հաւանութեամբ եւ հրամանաւ իսկ Սրբոյ Առաքելական աթոռոյն, գումարեցան առ ի Կ. Պոլիս մասնաւոր ժողովք հմուտ եւ յաջողակ եկեղեցականաց, որոց առաջի աչաց կալեալ զգրեալսն եւ զնկատեալսն ի Պատրիարքական Աթոռոյն Կիւլիկիոյ եւ կրօնաւորական Միաբանութեանց, եւ զհետ երթեալ առաւելապէս ընթացից՝ զոր ի բազում ամաց հետէ ունէր եւ պահէր կղերն, արկին ընդ գրով հրահանգս եւ կարգաւորութիւնս վասն եկեղեցական պաշտամանց, եւ մանաւանդ վասն թիւ եւ ձայնաւորի պատարագի։" Սակայն "զայս ամենայն սիւնհոդաւոր Եպիսկոպոսաց ազգիս ստհմանել եւ հաւանութեամբ Ս. Առաք. Աթոռոյն հաստատուն դործել" կարելի եղած չըլլալով, "թէպէտ յետ միութեան երկոցունց աթոռոցն՝ Պատրիարքականին Կիւլիկիոյ եւ Նախագահականին Կ. Պոլսոյ՝ գումարեցաւ ըստ ակնկալութեան ամենեցուն Սիւնհոդոս", առանց որոշման մը յանգելու՝ "պատշաճ թուեցաւ այժմ օրէնսք ինչ Պատարագամատոյց գրոց տպագրութեամբ ի լոյս ընծայել՝ [illegible], որպէս զի քննեալ Եպիսկոպոսաց եւ որոց անկ իցէ զամենայն զբովանդակեալսն՝ նշանակեսցեն անդէն զկարծիս իւրեանց" եւն։ Որպէս զի "դէթ ի գումարել վերստին Եպիսկոպոսաց Ազգիս ի Սիւնհոդոս", դիւրաւ միաբանութիւն ըլլալով եւ որոշ վճռուի պահելի ձեւն։ — Այս քննական սիւնհոդոսն եղաւ արդեամբք՝ աւելի անձուկ սահմանի մէջ քան նախընթացները՝ եւ որոշմունքն գրուեցան Հռոմայ տանիլ առջեւ՝ քանի մը տարի յառաջ. թէ ինչ արդիւնք ունեցան կամ պիտի ունենան՝ մեզի անծանօթ է։ Յիշենք որ ճիշդ այս մասեանն Վ. Հ. Յովսեփայ Գաթրճեան, զոր լուացուցինք եւ այնպէս կը հրատարակենք, յիշեալ քննողական ժողովներու առթիւ սկսուած եւ գրուած է։

*տպագրութենէն* (1873)՝ *տպագրուած է Երուսաղէմ* 1841*ին, դարձեալ* 1873 (*մեծ* 4° *էջք* 36), 1884։ *Զմիւռնիոյ* 1761*ի եւ Երուսաղեմայ* 1873*ի տպագրութեանց համեմատ՝ հանդերձ անգղ. թարգմանութեամբ՝ հրատարակեց նաեւ Ե. Աստուածատուրեանց.* (E. Asdvadzadouriants, Liturgy of the holy apostolic church of Armenia, *Լոնտոն* 1887.) — *Աւելորդ է ըսել որ այս յիշատակուածներէն դուրս ալ քանի մը տպագրութիւններ կան։*

*Բոլոր այս յիշուածները* Խորհրդատետր *են, այսինքն միայն բուն պատարագը կամ քահանային ըսելիքները կը պարունակեն։ Կան զի տպագիրք՝ ձեռագրաց հակառակ՝ խիստ եւ որոշ բաժանում մուծած են Խորհրդատետրի եւ Կարգի դպրութեան կամ Սպասաւորութեան։ Չենք սխալիր եթէ ըսենք որ այս ալ արդիւնք է Հռոմի* 1677*ի տպագրութեան, որուն հետեւած են ամէնքը, նաեւ երկրորդ խումբն՝ իրենց առաջնորդ ունենալով Թադէոսի Երեւանեցւոյ* 1686*ի տպագրութիւնն։ Առանց այս հետեւողութեան նշանակութիւն չունէր ոչ-կաթուղիկեայ Հայոց համար, որ* Ցած *պատարագ չունէին, միայն Խորհրդատետրի տպագրութիւնն առանց միւս ամբողջացուցիչ մասերու։ Խորհրդատետրին պէս այս մասերն ալ զատ տպագրուեցան, եւ շատ անգամ։ Յիշեցինք Հռոմի* 1677*ի տպագրութիւնն՝ երկու ձեւով. նոյնպէս Վենետկոյ* 1826*ի եւն եւ Աւետիքեանի՝ իտալերէն թարգմանութեամբ հանդերձ՝ հրատարակութիւնքն, որ լիակատար են կամ երկու մասերն ի միասին։ Չենք ուզեր յիշել այն համառօտ Սպասաւորութիւնքն, որ արեւելք տպուած գրեթէ ամէն Ժամագրոց մէջ կը գտնուին, գրեթէ այն ծաւալով եւ այն տեղը, որ ծաւալով եւ ուր տեսանք վերը համառօտ Կարգի Դպրութեան ձեռագիրները։*[1] *Նոյնպէս յիշենք միայն որ Դպրաց երգելի մասերը յաճախ կը գտնուին հնոց* “*Տաղարան*„ *կոչուած տպագրութեանց մէջ, ուր պաշտաման ամէն կարգի տաղեր հաւաքուած կ'ըլլան։*[2] *Յաւելապէս* “*Գիրք Դպրութեան*„ *տպուած է ի միջի այլոց՝ Վենետիկ* “*ի Թուին Հայոց ՌՃԼԳ*„ (= 1684), *նոյն տեղը՝ Թուին ՌՃԼԹ* (= 1690), “*Հանդէս Դպրութեան*„ *անուամբ հանդերձ Տաղարանաւ Կ.Պոլիս ի Թուին ՌՃԽԷ* (= 1698.) *նոյն տեղը* “*Գիրք Դպրութեան եւ Տաղարան*„... *ի տպարանի պարոն Կարապետի որդի տիրուկ Աստուածատուրի*„ *ՌՃՀԲ—Գ* (= 1723—24) *եւ ուրիշներ։ Բոլորովին լիակատար է Տրիեստի* 1785*ի տպագրութիւնը սա խորագրով* “Աղօթամատոյց *սրբոյ պատարագի, յորում գնին ամենայն քարոզք, ժամամուտք, ալէլուք եւ երգք ասելիք ի սարկաւագաց եւ ի դպրաց ի ձայնաւոր պատարագի*„ *եւն.* (*Տրիեստ* 1785, 4° *էջք* 33.) *Նոյնպէս լիակատար շատ փոքրադիր* “*Սպասաւորութիւն սրբոյ պատարագի.*„ (*Տրիեստ, նոյն,* 12° *էջք* 132։) *Ամէնէն աւելի լիակատար, բայց նոր յօրինուածով եւ աւուր-պատ-*

---

[1] Օրինակի համար՝ “Ժամակարգութիւն„ եւն, տպ. Սանկտ-Պետերբուրգ 1783, էջ 336—97 (տպ. Խալդարեանց Խօջամալի որդի Գր. Գրիգորի.) “Ժամագիրք„ եւն. տպ. Մոսկ. (Լազ. ճեմ.) 1853, էջ 381—466. Ժամագիրք՝ տպ. Կ.Պոլիս 1781, էջ 348—437։ Երկքն ալ ընդարձակ ունին Ժամամասերէն զատ ճաշու մասնեգիրք, ալէլուք եւն։ Ուրիշներն աւելի համառօտ են. այսպէս՝ նորերէն յիշելու համար՝ Ժամագիրք, տպ. Երուսաղէմ 1881, էջ 605—48. տպ. Կ.Պոլիս 1895, էջ 577—619, երկուքն ալ “Խորանք սարկաւագութեան եւ դպրութեան„ խորագրով։

[2] Տես “Մատենագիտ.„ էջ 161—62 եւ 658—61։ Այնտեղ յիշուածներէն դուրս ալ բազմաթիւ տպագրութիւնք կան. այսպէս լիակատար Կարգ դպրութեան է ամէն մասերով՝ “Տաղարան հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ„, Երուսաղէմ 1882, 8° էջք 1—180, անկէ ետքը Տաղեր (էջ 181—255) եւ Գանձեր (էջ 256—336։)

շարք բաժնուած բոլոր տարւոյն վրայ, քաղուածքներով Մաշտոցէն եւն հրատարակուած է "Տարեւոր կարգ դպրութեան կամ կարգաւորութիւն սրբոյ պատարագի" եւն. (Վիեննա 1877, 8° էջք 456.) ասկէ համառօտուած "Կարգ դպրութեան սրբոյ պատարագի", Վիեննա 1877 եւ 1892։ Չենք յիշեր նոյն եւ նման բազմաթիւ ուրիշ հրատարակութիւնները, օրինակի համար "Սպասաւորութիւն Պատարագի" (թիւ պատարագի համար)՝ Տրիեստ, 1786, Վիեննա 1854, 1865, 1889, եւն եւն։ Թող նաեւ պատարագի երգեցմանց ձայնագրութիւնք եւրոպական ձայնանիշներով ի Վիեննա, Վենետիկ եւ Լայպցիգ։[1]

Տպագիրք ըստ այսմ քիչ չեն քանակութեամբ. բայց քիչ են ներքին արժէք ունեցողները։ Ամենամեծ մասը, չըսենք ամէնն, իրարմէ տպագրուած են, ուստի ամէնուն մէջ բնագրի լիակատար միօրինակութիւն կը տիրէ։ Նաեւ վերյիշեալ կրկին խմբերու տարբերութիւնը քանի մ՚որոշ կէտերու վրայ է միայն։ Նոյնն ըսելու ենք մեր պատարագի բազմաթիւ թարգմանութեանց վրայ այլեւայլ եւրոպական լեզուներով։ Ասոնց մեծագոյն մասն ոչ թէ ուղղակի հայերէն բնագրին վրայէն է, այլ ուրիշ թարգմանութեան մը. բաց աստի անոնք՝ որ ուղղակի թարգմանուած են, մէկ երկու տպագրութեան համեմատ են։ Ասով մէկ կողմանէ՝ թարգմանութենէ թարգմանութիւն անցնելով՝ կարծես նոր կերպարանք առած է պատարագը. միւս կողմանէ միայն տպագրութիւնքն հիմն առնուած ըլլալով, յէականս միակ եւ միօրինակ ճանչցուած է Հայոց պատարագը։ Այն բազմաձեւ կերպարանափոխութիւնքն, զոր տեսանք ցայժմ այլ, ի հարկէ անծանօթ կը մնային եւրոպական քննիչներու, որոնք միայն այս կամ այն թարգմանութիւնը գործածելու ստիպուած էին։ — Նոր թարգմանութեանց շարքը չսկսած, յիշենք պատարագիս բաւական հնութիւն ունեցող ճաճաքերէն՝ թէեւ մասնական՝ թարգմանութիւնը։ Հայոց աշխարհէն դէպ ի Խրիմ եւ անկէ այլուր գաղթող այն Հայոց համար, որ թաթարախօս եղած էին, բնական էր որ թարգմանուէին այլեւայլ եկեղեցական գրքեր՝ պաշտամանց ներկայութեան ժամանակ գոնէ հասկընալու համար աղօթուածները։ Առջեւս ունիմ՝ ի միջի այլոց՝ երկու ձեռագիր՝ հայատառ թաթարերէն թարգմանութիւն Ժամագրոց եւ ուրիշ աղօթքներու, ուր՝ իր պատշաճ տեղը՝ կայ նաեւ պատարագը։ Սակայն ոչ թէ լիակատար Խորհրդատետր մըն է հոն եղածն, այլ աւելի դպրաց երգեցմունքն, համառօտ ըսելով՝ Կարգ Դպրութեան մը։ Յիշեալ երկու ձեռագիրքն են մեր մատենադարանի Թ. 143 եւ 525. առաջինն իբր ԺԵ—ԺԶ դարուն գրուած Մկրտիչ Ղազար-օղլու անձէն մաքուր բոլորգրով. երկրորդը ՌԿԷ (= 1618) թուին գրուած նոյնպէս բոլորգիր։[2]

Վերը յիշեցինք քանի մը թարգմանութիւնք որ հայ բնագրին հետ մէկտեղ լոյս տեսած են, ի միջի այլոց Հռոմայն 1642ին եւ Նոր թարգմանութիւնն 1677ի, իտալերէնն Յակոբայ վարդապետի 1690ին եւն։ Հ. Գ. Աւետիքեանի թարգմա-

[1] Հմմտ. "Երգք սրբոյ պատարագի ձայնագրեալք", վիմատիպ (Գեր. Հ. Ա. Վ. Այտընեան եւ ուսուցչապետ Վայս), Վիեննա 1877, չորեքձայն. իսկ ամբողջ նուագախմբի համար՝ պատրաստուած, բայց տակաւին չհրատարակուած։ — "Երգք Հայաստանեայց եկեղեցւոյ յերիւրեալք ըստ եւրոպական երաժշտութեան" (Les chants de la liturgie arménienne, traduits en notes européennes par M. Bianchini) չորս լեզուով, Վենետ. 1876 8° XIII + 223 pp. — Եկմալեանի նոր ձայնագրութիւնքն չորեքձայն (Լայփցիկ եւ Վիեննա 1896) տակաւին լոյս տեսած չեն։

[2] Տես "Ցուցակ" էջ 442—43 եւ 996—97. առաջինոյն մէջ պատարագն է՝ Թղ. 58ա—96բ. երկրորդին մէջ՝ Թղ. 40ա—53բ։

նութիւնն (Liturgia della Messa Armena, transportata in lingua Italiana etc. ի միջի այլոց նաեւ Վիեննա. 1873, 8° էջք 68), որուն այլեւայլ՝ առանձինն եւ Հայերէնի հետ՝ հրատարակութիւնքն ալ յիշեցինք, հիմն եղած է ուրիշ քանի մը թարգմանութեանց։ Ասոր վրայէն է Պասքալի գաղղիերէն թարգմանութիւնն 1844ին, որ Մինիի "Աստուածաբանական Համայնագիտարան„ հաւաքման ութերորդ հատորին վերջը տպագրուած է։[1] Աւետիքեանի գործոյն վրայէն է նոյնպէս Lapostolestի գաղղիերէն թարգմանութիւնն ի Վենետիկ 1851։[2] Վենետիկ լոյս տեսած են բաց աստի այլեւայլ ուրիշ թարգմանութիւններ ալ. այսպէս՝ իտալերէն մը 1854ին.[3] գաղղիերէն՝ 1870ին եւ դարձեալ 1876ի.[4] անգղիերէն՝ Հ. Յ. Իսավերտենցի թարգմանութեամբ՝ 1867 եւ 1873, ինչպէս նաեւ իւր չորեքմասնեայ գրոց մէջ "Հայոց Մաշտոցը„ առաջին մասը կը գրաւէ Հայոց պատարագը, երկրորդ եւ երրորդը Մկրտութեան, Դրոշմի եւ Կարգի խորհուրդները, իսկ չորրորդը Հայոց եկեղեցւոյ արարողութեանց վրայ կը խօսի, երկու լեզուաւ հրատարակուած գաղղերէն եւ անգղիերէն 1872 եւ 1876 տարիները։[5] Գերմաներէն լաւ թարգմանութիւն մը հրատարակեց Շթէք 1845ին ի Թիւպինկէն՝ բազմաթիւ ծանօթութիւններով կամ համեմատութեամբք Հայերէնին մասանց Բարսղի եւ Ոսկեբերանի պատարագամատոյցներուն, եւ այն լիակատար՝ թէ Խորհրդատետրին եւ թէ Կարգ դպրութեան մէկտեղ։ Միայն Խորհրդատետրը լոյս տեսած է գերմաներէն նաեւ մեր տպարանէն, երկրորդ տպագրութեամբ 1896ին։[6]

Այս ամէնը վերոյիշեալ առաջին խմբի թարգմանութիւնք կրնանք համարել. վասն զի նոյն խմբի այս կամ այն տպագրութեան վրայէն են։ Այս կարգի են նաեւ հնագոյն քանի մը լատին թարգմանութիւնք ալ։ Պրայթման կը յիշէ լատիներէն թարգմանութիւնն Lubeezykի (տպ. Քրաքաւ 1544), որմէ քա-

---

[1] Liturgie arménienne, traduite en italien par le Père Gabriele Avedichian, et en français, sur le texte italien, par l'Abbé J.-B.-E. Pascal. Petit-Montronge 1844, ի գիրս Migne, „Encyclopédie théoligique", Tome VIII, Appendice: 4° pp. 1257—1304. Սկիզբը (էջ 1261—72) Ներածութիւն մը գրուած է, ուր կը խօսուի Pidou-Lebrunի հրատարակութեան վրայ եւ կը յայտարարուի որ իւր թարգմանութեան հիմն առնուած է Աւետիքեանի գործոյն 1832ի տպագրութիւնը։ Ինչպէս Աւետիքեանինն՝ նոյնպէս այս եւ ուրիշ շատ թարգմանութիւնք լիակատար են, այսինքն Խորհրդատետր եւ Կարգ Դպրութեան միանգամայն։

[2] Liturgie de la Messe arménienne, traduite en français de la version italienne, par monseigneur Lapostolest, Venise 1851. (պատկերով։)

[3] La santa Messa dietro il Rituale Armeno. Venezia, Gio. Cecchini 1854, 12° pp. 30.

[4] Liturgie de la Messe arménienne, Venise 1870. "Մատենագիտ.„ էջ 282 այս տպագրութեան համար՝ բաց ի Վենետիկէն՝ կը յիշէ նաեւ Փարիզի Մուրատեան Վարժարանն եւ Abbeville, imprimerie Driez, C. Vaillant et Retaux. — Երկրորդին խորագիրն է՝ Liturgie de la Messe arm., Venise 1876.

[5] Armenian Liturgy, translated into english by the R. F. James Issaverdenz. Venice 1867, 1873. Նոյն տպարանի ցուցակն 1884 տարւոյ՝ "1870„ տարին կը դնէ տպագրութիւնը։ Նոյն հեղինակին չորեքմասնեայ գործքը Rituel arménien (I partie: Liturgie arménienne, IV partie: Rites et Cérémonies de l'église arm.) լոյս տեսած է Վենետիկ 1876 գաղղիերէն, որմէ յառաջ է անգղիերէնը (The sacred Rites and Ceremonies of the arm. Church.) Վենետիկ 1872։

[6] F. X. Steck, die Liturgie der katholischen Armenier. Tübingen, 1845, 8° pp. 95. — Մխիթարեան Հարց Վիեննայ՝ Die hl. Messe wie solche nach dem armenischen Ritus gelesen wird, Wien 1830, 12° pp. 80. Երկրորդ տպ. Die hl. Messe nach dem arm. Ritus. Wien 1896. 12° pp. 68. Կան տպուած նաեւ Սպասաւորութիւնք թիւ պատարագի համար եւրոպական տառերով։

ղուածք մ՚ըրած է Cassander իւր Liturgica գրութեան մէջ։ ԺԷ՛ դարուն հոգացած էր Պիտու լատիներէն թարգմանութիւն մը, զոր նաեւ Լըպրիւն՝ նոյն դարու հռչակաւոր ծիսագէտը՝ գտնելով նոյնը Պիք գիտնականին թղթերուն մէջ հրատարակեց իւր հռչակաւոր ծիսական գրութեան հինգերորդ հատորին վերջը։[1] Իտալերէն նաեւ Ցովհ. Սերպոս իւր ժամանակագրական Պատմութեան մէջ։[2] Չեն պակսիր անշուշտ ուրիշներ ալ. այսպէս Ամբրոսեան Մատենադարանի P. 192 Sup. ձեռագիրն Missa Armena թարգմանուած հայերէնէ լատիներէն, որ Վարդանայ անունն եւ 1620 թուականը կը կրէ, ինչպէս նաեւ "Բարթուղիմէոս Աբգարեանց։" Հաղորդութեան մասը կայ նաեւ Տէնցինկէրի քով։[3]

Զարմանք է որ այս թարգմանութեանց եւ ոչ մին, ուստի եւ ոչ Աւետիքեանինն՝ այլեւայլ գիտնոց քով իբրեւ Հայոց պատարագ վստահելի երեւցած է, այլ իբրեւ Հայ-կաթողիկեայց յատուկ նկատուած, առանց հիման։ Ջանք եղած է ըստ այսմ աւելի ապահով բնագիր գտնելու. եւ այս գտնուած է՝ ըստ կարծեաց ոմանց՝ Ցովսեփայ Արղութեանց Երկայնաբազուկի ռուսերէն թարգմանութեան մէջ. (տպ. Պետր. 1799։) Ասոր վրայէն՝ իբրեւ վաւերական աղբիւրէ՝ թարգմանած է R. W. Blackmore անգղիացին, եւ այս թարգմանութիւնը գրուած Nealeի հռչակաւոր գործքին ("Պատմ. սրբոյ արեւելեան եկեղեցւոյ") Ներածութեան մէջ։[4] Այս ռուսերէնէ անգղիերէն փոխադրութիւնը՝ նոյնպէս իբր բուն Հայոց պատարագ՝ լատիներէնի վերածած է Daniel[5] իւր յաճախ յիշուած գործքին մէջ. եւ որովհետեւ այս երկու նախընթաց թարգմանութիւններէ բղխած երրորդը ստուգիւ բաւական կը տարբերի, ինչպէս բնական է, ուղղակի հայերէնին վրայէն եղած օրինակի համար Աւետիքեանի եւ Շթէքի թարգմանութիւններէն, վերջիններուս ընթերցուածքները դրած է Daniel ծանօթութեանց մէջ իբրեւ Հռովմէականաց յատուկ։ Ցիշեալ Blackmoreի թարգմանութեան համեմատ է ուրիշ անգղիերէն մ՚ալ, զոր յարդարած է՝ համեմատելով Երուսաղեմայ 1841ի տպագրութեան հետ՝

[1] Pidou de St. Olon, Liturgia armena cum ritu et cantu ministerii, ըստ Պրոյթմանի 1680ին „from mss. supplemented by ed. 1677." Պիտու որ երկար տարիները Պարսկահայոց մէջ անցրած էր եւ 1687ի եպիսկոպոս անուանուած Բաբելոնի, մեռած է Սպահան 1694ին։ Lebrun գիտնականն, որ գիտէր թէ Սորպոնի ուսուցչապետներէն մին Piques յանձնած էր հայազգի Զաքարիա քահանայի թարգմանել Հայոց Պատարագը լատիներէնի, փնտռելով՝ Piquesի 1699ին մեռնելէն ետքն՝ անոր թղթերու մէջ գտած էր թարգմանութիւն մը՝ ոչ թէ Զաքարիայի, այլ Պիտուի անուամբ։ Նոյնը՝ քիչ փոփոխութեամբ՝ առաւ Լըպրիւն իւր երկասիրութեան մէջ (Explication etc. V) հինգերորդ հատոր մը հրատարակելով։ Իւր երկասիրութեան տիտղոսն է Explication littérale historique et dogmatique des prières et des cérémonies de la messe (Հտր. Ա, 1716ին.) ասոր շարունակութիւնը լոյս տեսաւ երեք հատոր 1726ի սա խորագրով՝ Dissertations historiques et dogmatiques sur les liturgies de toutes églises du monde chrétien. Տես Հտր. Ե, Ճառ Ժ, էջ 329 եւն։

[2] Gio. de Serpos, Compendio storico di memorie cronologiche concernenti la religione e morale della nazione Armena suddita dell' impero Ottomano. Վենետիկ 1786, Հտր. Գ, էջ 32 եւն։

[3] H. Denzinger, Ritus Orientalium, Coptorum, Syrorum et Armenorum, in administrandis Sacramentis, եւն, Վիւրցպուրկ 1863, Հտր. Ա, 421—24, Ordo communionis apud Armenos, ուր նաեւ "Մայր հաւատոյ" տաղը լատիներէն, ինչպէս գաղղիերէն Pascalի քով, գերմաներէն Շթէքի քով, եւն։ Տէնցինկէրի երկհատոր գրքին մէջ Հայոց Մաշտոցի Խորհրդոց մատակարարութեան ամէն մասերը կան առնուած լատիներէն թարգմանութեամբ եւ տեղեկութիւններով։

[4] Տես Neale, History of holy eastern church. I. Introduction, p. 380—700 ծանօթութիւններով եւն։

[5] A. Daniel, Codex liturgicus, IV, 451—82. Liturgia Armenorum.

Fortescue անգղիացին իւր շատ մասամբ ընտիր գործքին մէջ՝ "Հայկական Եկեղեցին„ տպագրուած ի Լոնտոն 1872ին։[1] Ուրիշ անգղիերէն թարգմանութիւն մը՝ Կ. Պոլսոյ 1823ի տպագրութեան համեմատ՝ ըրաւ հայագէտն Մալան (Լոնտ. 1870), ուր Խորհրդատետրը Ս. Գր. Լուսաւորչի անունը կը կրէ։[2] Մալանի այս թարգմանութիւնը կրկնուած է՝ բայց յաւելուածներով Ն. Աստուածատրեանցի հրատարակութեան մէջ, (Լոնտ. 1887), զոր վերը հրատարակութեանց մէջ յիշեցինք։[3] Նոյն Մալանի թարգմանութեան վրայ հիմնուած է, սակայն հետեւելով Աստուածատրեանցի հրատարակածին եւ հայերէն բնագրին 1844ի տպագրութեան յԵրուսաղէմ, յաճախ յիշուած Պրայթմանի երկասիրութեան մէջ դրուած Հայոց Պատարագն անգղիերէն լեզուաւ[4]։ Յիշելու ենք նաեւ Դիւլորիէ հայագէտին անուն կրող գործն, որ ուրիշ գաղղիերէն թարգմանութիւն է մեր պատարագին ի Փարիզ 1855 եւ 1857։[5] Այս գործքին ճակատին բոլորովին համեմատ խորագրով ռումաներէն գրութիւն մ'ալ կը յիշուի (Եաշ 1874[6]), որ թերեւս առանց կապակցութեան չըլլայ նախընթացին հետ կամ անոր թարգմանութիւնը. գիրքը տեսած չենք։ Յունարէն թարգմանութիւնն ի թերթին Εὐαγγελικὸς Κῆρυξ (տես վերն էջ՝ 4) տեսած չենք։ Ռումաներէն նոր թարգմանութիւն մ'ալ լոյս տեսած կը յիշուի Ջանիւք Սրմաքաշեանի։[7]

Ահա մեծ քանակութիւն մը տպագրութեանց ու թարգմանութեանց մեր Սովորական պատարագին, որ իւր այս ձեւոյն ծանօթացած է ամէն ծիսագէտ գիտնոց։ Մեր Պատարագը հռոմէական եւ ոչ-կաթուղիկէ բաժնել եւ իրարմէ շատ տարբեր կարծել, ինչպէս ըրած են գիտնականներէն ոմանք, զուր է եւ անճիշտ։ Անշուշտ քանի մ'որոշ տարբերութիւններ կան առաջին եւ երկրորդ

---

[1] The Armenian Church, being a sketch of the History, Liturgy, Doctrine and Ceremonies of this ancient national church, by E. F. K. Fortescue, with an Appendix by the Rev. S. C. Malan. London 1872, 8° pp. 336, նկարներով։ Նախ կայ համառօտ Պատմութիւն Հայ եկեղեցւոյ (էջ 17—41), "Տօմար Հայոց եկեղեցւոյ„ (էջ 42—53.) յետոյ Պատարագը լիակատար հանդերձ Կարգաւ դպրութեան (էջ 55—114) որ յատուկ մասն մըն է ուրոյն ճակատով՝ The liturgy or the Order for the administration of the holy Communion according to the use of the... Church of Armenia, եւն, վերջը քանի մը ծանօթութիւններով. Կը յաջորդեն տեղեկութիւնք Հայոց եկեղեցւոյ, Էջմիածնի, Աստուածաշնչի եւն վրայ. ի միջի այլոց (էջ 150—83) Խորհրդատետրին (The Liturgy) եւ դարձեալ (էջ 184—93) Արարողութեանց վրայ։ Անկէ ետքը գլուխներ կան հռոմէական եւ բողոքական Հայոց վրայ եւն, ի մասնաւորի գլուխ մը (էջ 222—24) համեմատութիւն Anglican and Armenian Liturgies. Անկէ ետքը կը սկսի Մալանի մասն, նախ Հայոց Հանգանակը՝ թարգմանուած եւ ներածութիւն (էջ 245—89) եւ յետոյ (էջ 291—321) թարգմանութիւն կանոնի Մկրտութեան Մաշտոցի. երկու վերջին կտորները հասարակաց ճակատ մ'ունին՝ The Confession of Faith of the orthodox Armenian Church together with the Rite of holy Baptism ... translated from the originals by the Rev. S. C. Malan. Քանի մը ծանօթութիւններով (էջ 322—36) կը փակուի գիրքը։

[2] Malan, The divine liturgy of S. Gregory the Illuminator. Լոնտոն 1872։

[3] Տես վերն՝ էջ. 602։

[4] F. E. Brightman, Liturgies eastern and western. I. Oxf. 1896, p. 412—57. The liturgy of the Armenians. Տեղեկութիւնք ի Ներածութեան՝ էջ ԼԶ—ՃԱ, միշտ Բիւզանդական բաժնին մէջ։

[5] Dulaurier, Histoire, dogmes, traditions et liturgie de l'église arménienne. Paris 1855, 1857. p. 87ff։ Liturgie de notre bienheureux père St. Grégoire l'Illuminateur etc. Տես վերն՝ էջ 4։

[6] Խորագիրն է՝ Istoria, dogmale, traditionile si Liturgia Bisericei Armene etc. Jassy 1874.

[7] Sarmacas L. Botezula si Liturgia Biserieci Armene. Jashi, tip. P. C. Popowicz, 1895.

*խմբին մէջ. բայց՝ մէկ երկու կէտ ի բաց առեալ որ վարդապետական խնդրոց հետեւանք են, շատ մեծ չեն են այս տարբերութիւնքն։ Ի՞նչ են արդեամբք այս քանի մը կէտերու անհամաձայնութիւնքն համեմատելով մեր ձեռագրաց ներքնոյն պէսպիսութեանց, ինչպէս կը տեսնենք առջեւնիս ԺԳ դարէն մինչեւ ԺԷ դար կամ տպագրութեանց սկիզբը։ Ակնարկ մը մեր յաջորդ հրատարակութեան կից ծանօթութեանց բաւական է համոզելու, թողլով նաեւ աւելի հնագոյն խմբագրութիւնքն BDF, Լիոնեանն, Արծիշեցւոյնը, Լամբրոնեանն եւ աւելի հին Խոսրովեանն։ Այս եղած է արդէն պատճառն այն այլեւայլ անծիրդ կարծիքներուն որ գիտնոց եւ ոչ մին ձեռագիրներու տարբերութիւնքը պէտք եղածին պէս ուսումնասիրած է կամ մեր պատարագի զարգացման պատմութեան փորձ մ՚անգամ ըրած, ինչպէս եղած է առաջիկայ երկասիրութեանս մէջ։ Աւետիքեանի պէս իրաց հմտութեամբ լի անձինք մեր Սովորականը հնագոյն դարեր կը հանեն, մինչդեռ իւր վերջին եւ միօրինակ ձեւը շատ նոր է ընդհականակն։ Նթէ առաջի խմբի հիմը՝ Հռոմի 1677ի տպագրութիւնը՝ կը դարձուի քանի մը փոփոխութիւն մուծանելուն համար եւ այն՝ ջանիւք հայազգւոյ մը (Բարսեղեանի), շատ մասամբ իրաւացի է այս. բայց սխալ է նոյնպէս կարծել թէ երկրորդ խմբի ամէն ընթերցուած ալ հին է եւ բուն հարազատ հայկական։ Աւելորդ չէ կարծենք հոս ամփոփ դնել այս խմբերու գլխաւոր տարբերութիւնները։*

*Գլխաւոր ամբաստանուողն է Հռոմի 1677ի տպագրութիւնն՝ իւր շեղումներովն։ Ասոր վերջը կայ* Correctiones *կամ Սրբագրութեանց ցանկ մը, նախ Ժամագրոց եւ յետոյ Տարականցի։ Ժամագրոց մէջն են նաեւ Պատարագամատուցի քանի մը սրբագրութիւնք Ամսթերտամի 1667ի տպագրութեան էջերուն համեմատ դասաւորուած։*[1] *Կանխենք ըսենք որ ընդհանրապէս Հռոմայ կողմանէ պաշտօնական հրամանագիր մը չէ այս, եւ ոչ ալ ծանօթ է քահանայապետական հրամանագիր կամ վճիռ մ՚այս ամէնն այսպէս պահելու։ Թէեւ արդեամբք շատ բան շատերէն պահուած է, ոչ նուազ բան ալ՝ որ լեզուական անհեթեթութիւն էր՝ Բարսեղեանի անհմտութենէն յառաջ եկած, դարմանուած է արդէն այլեւայլ տպագրութեանց մէջ։*[2]

*Ժամագրոց եւ Տարականցի սրբագրութիւնք թող տալով՝*[3] *կը մնան Պատարագամատուցի համար յատկապէս քանի մը կէտ, որոնք հետեւեալներն են։*

---

[1] Տպ. Հռոմ. 1677, էջ 41—44 Correctiones Oficii divini Armenorum կամ «Սրբագրութիւն Ժամակարգութեան Հայոց ըն Ժամագրքեան, որոյ մակագիրն է. Աղօթամատոյց եւ Ժամագիրք... յԱմստերդամ, ի թուին Քրիստոսի 1667, եւ Հայոց 1116, փետրվարի ամսոյ քսան, Սրբագրեալք են այսպէս» եւն։

[2] Արդէն այս Սրբագրութեանց ծայրը ասկէ ալ կայ (էջ 49, հատ. ԼԱ) «Գիտելի է եւս, զի Սրբազան Ժողովս որում յատուկ է հոգալ զհամաստրութիւն հաւատոյ եւ ի բաց բառնալ զորոմն ի միջոյ ցորենոյն, կամեցաւ միայն սրբագրել զայնոսիկ, որք յայտնապէս կամ ծածկաբար հնչէին ընդդէմ ճշմարտութեան հաւատոյն եւ հետեւապէս էին ընդդէմ կեցութեան հոգւոյ։ Իսկ զախալանս՝ որք են ընդդէմ արհեստի քերականութեան կամ հայկաբանութեան, ոչ հոգացաւ ինքն սրբագրել, զի մի ծանր թուեսցի լսողաց. այլ եթող ճշմարտասիրաց վարդապետաց եւ այլոց գիտնոց ուսումնասիրաց. որպէս զի նոքա, որք են քաջապէս տեղեակ հայկաբանութեան, ըստ տեղւոյն եւ ժամանակին խոհեմապէս եւ ճշմարտաբար հոգասցեն սրբագրել զնոյնս» եւն։ — Այս արդէն հարուած մըն է Բարսեղեանի ձեռնարկած հայկաբանութեանն, որ օրինակի համար «յարեալ» կը սրբագրէ «յարուցեալ» սխալ համարելով, եւ նմաններ։

[3] Ցանկապէս պատարագի կը վերաբերին Սրբագրութեանց Հատ. Ը—ԺԽ. բայց անուղղակի նաեւ Հատ. Բ-Զ, ուր կը հրամայուի

ա. Ծննդեան Ժամամուտը “Աստուածածին անհարսնացեալ... եւ զԱստուած անժամանակին ծնար„ եւն՝ սրբագրել այսպէս “Աստուածածին առն անգիտակ... զԱստուածն անբովանդակելին ծնար„ եւն։ Այս անյարմար սրբագրութիւնն, որուն առաջին մասը (“առն անգիտակ„) արդէն կայ Ոսկանայ եւ Թադէոս երիցու հրատարակած Մարսիլիոյ 1673 տարւոյ Ժամագրոց մէջ (էջ 112), ուղղուած է Վենետիկոյ վերջին տպագրութեանց մէջ. Թրիեստին եւ Վիեննայինն ըրած՝ “...ամենօրհնեալ„ եւն։ — Բ. Ժամամուտներէն հանել կը հրամայուի երկու հատ՝ “Թագաւորացն„ եւ “Վարդանանցն„ (կամ “Որդւոյ յեր [illegible] Թագաւորին„ եւն, եւ “Յաղթարանական ի ճակատամարտին„ եւն.) որոնք արդէօք ալ Ա. խմբի տպագրութեանց մէջ կը պակսին։[1] Ասոր փոխարէն Բ. խմբի մէջ մուծուած են քանի մը Ժամամուտք, որ առաջնոյն մէջ իրաւամբք չկան. չենք հանդիպած մենք ալ որեւէ ձեռագիր օրինակի մէջ։[2] — Գ. Բաւական մեծ փոփոխութիւն կրած է Հանգանակը նոյն Սրբագրութեանց համեմատ (Հած. ԺԱ—ԺԲ), բայց յետոյ արդէն շատ բան դարմանուած նոր տպագրութեանց մէջ։ Բարսեղեան կ'ուզէ որ ընդունելի ըլլան հետեւեալ ընթերցումները՝ “Հաւատամք... Հայրն ամենակալ (փխ. “ամենակալ„)... ծնեցեալ (փխ. “ծնեալ„) յԱստուծոյ Հօրէ, Միածին, նախ քան զամենայն յաւիտեանս՝ (փխ. “այսինքն յէութենէ Հօր„.) նոյն էութեան համագոյակից Հօր (փխ. “նոյն ինքն ի բնութենէ Հօր„) ...որով եղեն զամենայն, զհոգի եւ զմիտ (փխ. “զմիտս„, բայց ձեռագիրք հոս պէսպէս են.)... չարչարեցեալ, խաչեցեալ, թաղեցեալ, յարուցեալ (փխ. “չարչարեալ, խաչեալ, թաղեալ... յարուցեալ„)... Հաւատամ եւ ի սուրբ Հոգին յանեղն եւ ի կատարեալն որ ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխի... քարոզեաց զառաքեալն (փխ. “զառաքեալսն„) եւն։ Ասոնց միջէն վարդապետական տեսակէտով է միայն “որ ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխի„ յաւելուածը, միւսները՝ ինչպէս Բարսեղեանի սրբագրութեանց ամենամեծ մասը՝ սխալ հասկընալու եւ տգիտական կասկածանաց եւ լեզուի անհմտութեան արդիւնք. բայց քանի մը բան ընդունած են Ա. խմբի ամէն տպագրութիւնք, ի մաս-

“Ասացուածքին„ եւ Պատարագի պատշաճ տեղերու մէջ պարբերաբար եւն յիշատակութենէն յառաջ քահանայապետի յիշատակութիւնը չմոռնալ։ Դարձեալ (Հած. Դ) խրատագիր յիշատակութեան թէ “Բայց կաթուղիկոսն Հայոց կամ եպիսկոպոսն, եթէ իցէ ուղղափառ, անուանիցի ըն իւրում վիճակի եւ թեմի. իսկ եթէ իցէ հերետիկոս կամ հերձուածող, ոչ ուրեք եւ ոչ երբեք անուանիցի։„ Եւ վերջապէս (Հած. Զ) երեքսրբեանն ըսել պարզ “Սուրբ Աստուած... եւ անմահ, ողորմեա մեզ„, առանց ոչ-կաթուղիկեայց ծանօթ յաւելուածներու “որ յայտնեցար վասն մեր„, “որ խաչեցար վասն մեր„ եւն ըստ աւուր պատշաճից։

[1] Ասոնց տեղ կը յանձնարարուի ըսել “Մարտիրոսաց„ Ժամամուտն՝ “Ի տաճարէ սրբոյ։„

[2] Այսպէս “Էջմիածնի„ տօնի Ժամամուտ մը “Տէր Տէր Եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, որ ա-ցուցեր Եւ [illegible] բազմաչարչար վկային քո„ եւն, տես Ժամագիրք տպ. Պետր. 1783, էջ 343. տպ. Մոսկ. 1853, էջ 391, եւ այլուր։ — Երկրորդ մը “Լուսաւորչին„, որ կը սկսի՝ “Ցնծայ այսօր եւ ցուարճանայ եկեղեցի սուրբ՝ տօնելով մեծաւ հանդիսիւ զՀայրապետին յիշատակն„ եւն. (տես տպ. Պետր. 346, Մոսկ. 395, եւն։) — Երրորդ մը “Ամենայն սրբոց„ այսպէս. “Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին, սրբոյն Յօհաննու Կարապետին, սրբոյն Ստեփաննոսի Նախավկային եւ սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչին, եւ սրբոց առաքելոցն եւ մարգարէից, հայրապետաց եւ վարդապետաց, մարտիրոսաց եւ թագաւորաց, ճգնաւորաց եւ կուսանաց, նահատակաց եւ միանձանց, եւ ամենայն սրբոց քոց, հնոց եւ նորոց, յայտնից եւ անյայտից, որոց այսօր է յիշատակ, զխաղաղութիւն եւ զերկնային ողորմութիւն քո պարգեւեա մեզ մարդասէր Տէր։„ (Տես տպ. Պետր. 357, Մոսկ. 407, եւն։) Գոնէ “Էջմիածնի„ Ժամամուտը ԺԵ դարուն կէսէն յառաջ չի կրնար շինուած ըլլալ։

ա. ծննդեան ժամամուտը «Աստուածածին անհարսնացեալ ... եւ զԱստուած անճառնալըն ծնար» եւն՝ սրբագրել այսպէս «Աստուածածին առն անգիտակ ... զԱստուածն անբովանդակելըն ծնար» եւն։ Այս անյարմար սրբագրութիւնն, որուն առաջին մասը («առն անգիտակ») արդէն կայ Ոսկանայ եւ Թադէոս երիցու հրատարակած Մարսիլիոյ 1673 տպուած ժամագրոց մէջ (էջ 112), ուղղուած է Վենետիկոյ վերջին տպագրութեանց մէջ. Թիֆլիսին եւ Վիեննայինն ըստ՝ «...ամենօրհնեալ» եւն։ — Բ. Ժամամուտներէն հանել կը հրամայուի երկու հատ՝ «Թագաւորայն» եւ «Վարդանանցն» (կամ «Որդւոյ յետ [illegible] Նա-գաւորին» եւն, եւ «Յաշխարհական ի ծնողաց [illegible]» եւն.) որոնք արդէն ալ Ա. խմբի տպագրութեանց մէջ կը պակսին։[1] Ասոր փոխարէն Բ. խմբի մէջ մուծուած են քանի մը ժամամուտք, որ առաջնոյն մէջ իրաւամբք չկան. չենք հանդիպած մենք ալ որեւէ ձեռագիր օրինակի մէջ։[2] — Գ. Բաւական մեծ փոփոխութիւն կրած է Հանգանակը նոյն Սրբագրութեանց համեմատ (Հմծ. ԺԱ—ԺԲ), բայց յետոյ արդէն շատ բան դարմանուած Նոր տպագրութեանց մէջ։ Բարսեղեան կ'ուզէ որ ընդունելի ըլլան հետեւեալ ընթերցումները՝ «Հաւատամք ... Հայրն ամենակալ (փխ. «ամենակալ»)... ծնեալ (փխ. «ծնեալ») յԱստուծոյ Հօրէ, Միածին, նախ քան զամենայն յաւիտեանս (փխ. «այսինքն յէութենէ Հօր».) Նոյն ընդ նմին համագոյակից Հօր (փխ. «Նոյն ինքն ի բնութենէ Հօր») ...որով էառ զմարմին, զհոգի եւ զմիտ (փխ. «զմիտս», բայց ձեռագիրք հոս պէսպէս են.)... չարչարակից, խաչակից, թաղակից, յարուցեալ (փխ. «չարչարեալ, խաչեալ, թաղեալ ... յարուցեալ»)... Հաւատամ եւ ի սուրբ Ոգին յանեղն եւ ի կատարեալն որ է ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխի... քարոզեաց զառաքեալսն (փխ. «զառաքեալսն») եւն։ Ասոնց միջէն վարդապետական տեսակէտով է միայն «որ ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխի» յաւելուածը, միւսները՝ ինչպէս Բարսեղեանի սրբագրութեանց ամենամեծ մասը՝ սխալ հասկնալու եւ տգիտական կասկածանաց եւ լեզուի անհմտութեան արդիւնք. բայց քանի մը բան ընդունած են Ա. խմբի ամէն տպագրութիւնք, ի մասն-

---

«Աստուածաքին» եւ Պատարագի պատշաճ տեղերու մէջ պատրիարքի եւն յիշատակութենէն յառաջ քահանայապետի յիշատակութիւնը չմոռնալ։ Դարձեալ (Հմծ. Դ) խրատագիր յիշատակութեան թէ «Բայց կաթուղիկոսն Հայոց կամ եպիսկոպոսն, եթէ իցէ ուղղափառ, անուանիցի ըն իւրում վիճակի եւ թեմի. իսկ եթէ իցէ հերետիկոս կամ հերձուածող, ոչ ուրեք եւ ոչ երբեք անուանիցի»։ Եւ վերջապէս (Հմծ. Զ) երեքսրբեանն բառ պարզ «Սուրբ Աստուած... եւ անմահ, ողորմեա մեզ», առանց ոչ-կաթուղիկեայց ծանօթ յաւելուածներու «որ յարեար վասն մեր», «որ խաչեցար վասն մեր» եւն ըստ աւուր պատշաճից։

[1] Ասոնց տեղ կը յանձնարարուի ըսել «Մարտիրոսաց» ժամամուտն՝ «Ի գալուստ որդւոց»։

[2] Այսպէս «Էջմիածնի» տօնի ժամամուտ մը «Տէր Տէր Իւ Փրկիչ Ցեղեան Քրիստոս, որ [illegible] բազմաչարչար վկային քո» եւն, տես Ժամագիրք տպ. Պետր. 1783, էջ 343. տպ. Մոսկ. 1853, էջ 391, եւ այլուր։ — Երկրորդ մը «Լուսաւորչին», որ կը սկսի՝ «Ցնծայ այսօր եւ զուարճանայ եկեղեցի սուրբ՝ տօնելով մեծաւ հանդիսիւ [illegible]» եւն. (տես տպ. Պետր. 346, Մոսկ. 395, եւն։) — Երրորդ մը «Ամենայն սրբոց» այսպէս. «Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին, սրբոյն Յովհաննու Կարապետին, սրբոյն Ստեփաննոսի Նախավկային եւ սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչին, եւ սրբոց առաքելոցն եւ մարգարէից, հայրապետաց եւ վարդապետաց, մարտիրոսաց եւ թագաւորաց, ճգնաւորաց եւ կուսանաց, նահատակաց եւ միանձանց, եւ ամենայն սրբոց քոց, հնոց եւ նորոց, յայտից եւ անյայտից, որոց այսօր է յիշատակ, զխաղաղութիւն եւ զերկնային ողորմութիւն քո պարգեւեա մեզ մարդասէր Տէր։» (Տես տպ. Պետր. 357, Մոսկ. 407, եւն։) Գոնէ «Էջմիածնի» ժամամուտը ԺԵ դարուն կէսէն յառաջ չէր կրնար շինուած ըլլալ։

նաւորի “նախ քան զամենայն յաւիտեանս” եւ “նոյն ինքն համագոյակից” ընթերցումները: Հանգանակի մասին լիակատար խօսուած է ուրիշ տեղ:[1] — Դ. “Տէր մեր եւ Փրկիչ” աղօթքին մէջ կը սրբագրէ Բարսեղեան “..պարգեւեցեր տառապակէս զպարգեւս Ոգւոյդ սրբոյ Երանեցելոյ (փխ. “երանելի”) առաքելոցն:” — Ե. (Հմծ. ԺԴ) իւր հայերէնագիտութեան մեծ ապացոյց մը կու տայ Բարսեղեան՝ երկարօրէն ապացուցանել ուզելով որ բոլոր պաշտաման դրոց մէջ պէտք չէ “Հոգւոյ սուրբ” ըսել, այլ “Ոգւոյ սուրբ.” վասն զի “հոգի” կը նշանակէ եղեր միայն եւ միայն anima կամ յունարէն ψυχὴ կամ մարմնոյ հետ կապուած հոգեղէն էակ. մինչդեռ անմարմին էակաց միակ հայերէն բառն ըլլայ “ոգի” (= spiritus, յոյն՝ πνεῦμα), ուստի “Ոգի սուրբ”: — Զ. Մարգարէից Ժամամուտի սկիզբը “Տէր որ հիմնեցուցեր զեկեղեցի քո ի վերայ վէմ հաւատոյ” եւն. (փխ. “ի վերայ վիմին հաւատոյ:”) Ասով կը լմննայ այս “Սրբագրութեանց” շարքն՝ որչափ մեր նիւթոյն հետ կապ ունի:

Սակայն չկարծուի որ այսչափով գոհ եղած է Բարսեղեան: Ընդհակառակն նոյնչափ եւ աւելի եւս սրբագրութիւններ ըրած է, միայն թէ ըսելայն՝ առանց որեւէ ծանօթութեան իւր սրբագրածը տպագրելով բնագրին մէջ: Ասոնց մեծ մասն մանր մունր բաներ են,[2] ոմանք յայտնապէս Բարսեղեանի գործածած օրինակին լաւ չըլլալէն յառաջ եկած,[3] ուրիշները պարզապէս մոռացութեամբ պատճառած, վասն զի կան դէպքեր՝ ուր հայերէնին մէջ այս կամ այն բառն ու խօսքը դուրս ինկած է, մինչդեռ Բարսեղեան դրած էր զայն ալ լատիներէն

[1] Տես Հ. Յ. Գաթրճեան, “Հանգանակ հաւատոյ, որով վարի Հայաստանեայց եկեղեցի. քննութիւն Հանգանակի ծագման, հեղինակին եւ ժամանակին:” Վիեննա 1891, 8° էջք 49: Այս գործքը՝ յաւելուած էր հեղինակին ներկայ երկասիրութեանս կամ Պատարագամատուցաց. բայց լաւագոյն երեւցաւ զատ հրատարակել: Նոյնը լատիներէն լեզուաւ ալ հեղինակէն երկասիրուած էր, որ եւ այն լոյս տեսաւ. (De fidei Symbolo եւն, Վիեննա 1893, 8° էջք 52:)

[2] Ի մէջ այլոց՝ “Մարմին տէրունական եւ արիւն փրկչական կայր (փխ. “կայ”) առաջի” եւն. — Ծննդեան Մեղեդւոյ մէջ՝ “...եւ դասուց Դաւթի ծնանի զՈրդին Աստուծոյ”, որ զանէ աւելի պայծառ է քան ձեռագրաց նոյն իմաստով ըսածն այստեղ “եւ ուստի Դաւթի ծնանի զՈրդին Աստուծոյ:” — Մեղեդի խաչի՝ “...մխիթարիչ եղեալ Սիոնոյ” (փխ. “Սիոնի.”) — Սրբասացութիւն Ցինանց՝ “...Եկայք ժողովուրդք զուարճնութիւնս ընդ հրեշտակս երգեսցուք Աստուծոյ (փխ. “Տեառն” ըստ ձեռագրաց.) — Սրբասացութիւն Մարգարէից՝ “...որ խոնարհութեամբ իջեր ի յերկիր, Տէր (փխ. “Տէր”) պատարագս մատուցանեմք” եւն: — Քարոզ Տէրունականէն յառաջ՝ “Վասն հաշտութեան (փխ. “վասն հաշտութեան”) սուրբ եւ աստուածային պատարագիս” եւն: — Ասոնց եւ նմանեաց կարգէն կը համարի Աւետիքեան Կանոնի սկիզբներն եղած սա խօսքը “վասն զի եղեալ առանց ցնորից մարդ եւ անշփոթ մարմնացեալ” եւն. ձեռագիրք (ABCDEFG եւն) կը կարդան “անշփոթ մարմնացեալ”, ինչպէս Բ խմբի շատ տպագիրք ալ (այսպէս OS), բայց նոյն խմբի PQ ալ Բարսեղեանի հետ “միաւորութեամբ” կը տպագրեն:

[3] Այսպէս՝ “Որ գերագոյն” տաղին կից “Խնդա յոյժ դուստր” տան մէջ՝ “Զի ծնեալն Աստուած, ծնն ի յէէն” եւն (փխ. “էնն ի յէէն” եւն.) — Գօտւոյ զգեստաւորման աղօթքին մէջ՝ “Շուրջ պատեսցէ կամօք հաւատոյ զմէջս սրտի իմոյ. եւ չիջուսցէ” եւն, փխ. “...սրտի իմոյ եւ շիջուսցէ” եւն. — “Ոչ ոք արժանի է” աղօթից մէջ՝ “Աղաչեմ զքեզ միայն բարերար, նայեա յիս” եւն, փխ. “...բարերար եւ հեշտալուր”, զոր ունին ամէն ձեռագիրք: — Աւետիքեան այս կարգէն կը համարի “Արժան է ստուգապէս” աղօթքին սա տեղը՝ “...զանձնիցս բարձեր զկրճիմն: Որ ժողովուրդ ինքեան առնել” եւն, ուղղագոյն ընդունելով “Նոր ժողովուրդ” ընթերցուածն: “Նոր” կ'ընթեռնուն արդեամբք ABCDF եւն ձեռագիրք եւ Բ խմբի տպագիրք (այսպէս OPQ.) բայց նաեւ “Որ” ընթերցուածը հին է՝ այսպէս EM եւ տպագիրներէն S եւ այլք, նոյնն արդէն Լամբրոնացւոյ քով. (տես վերն՝ էջ 548:) Ուստի պէտք չկայ որ այս ընթերցուածն անպատճառ աղաւաղած ըլլայ:

թարգմանութեան մէջ:[1] Գլխաւորներէն յիշենք հետեւեալները: «Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ„ եւն տողին բոլոր բայերու կատարեալները փոխուած են ապառնիդ, ուստի "... յայտնեսցի„ եւն. բաց աստի դուրս թողուած սա երկտողը "Ընկղեցիս մի անձն եղաւ, համբոյրս յաւդ լռման առաւ„, որ այդէն Լամբրոնեանին մէջ կայ: Վերաբերութեան հանդիսականին մէջ երկար եւ անձահ խրատագիր մը կցուած է, թէ "պարտ է առնել զնոյն արարողութիւն զկնի սրբագործութեան եւ ոչ աստ„ եւն եւն, անհիմն երկիւղիւ՝ թէ վերաբերութեամբ տակաւին չսրբագործեալ հացին եւ գինւոյն երկրպագութիւն կը մատուցուի: Սրբագործութեան խօսքերէն յառաջ ուր ձեռագիրք կ'ըսեն "Առեալ զհացն ի սուրբ, յաստուածային, յանմահ, յանարատ եւ յարարչագործ ի ձեռս իւր„ եւն, դուրս հանուած են Բարսղէն երկու նոտրգիր բառերն, եւ եղած "... յաստուածային եւ ի պատուական ձեռս իւր„ եւն: Յիշատակաց մէջ ձեռագիրք կը կարդան "Սովաւ հանգո զամենեսեան յառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն, զնախահարս, զհայրապետս, զմարգարէս, զառաքեալս, զվկայս, զեպիսկոպոսունս„ եւն. հոս ալ նոտրգիրները հանուած են:

Ամենէն նշանաւորն է Կոչման աղօթքին ձեւի փոփոխութիւնը՝ թէեւ պարզապէս բայի եղանակի մը տարբերելով: Ծանօթ է ամէն ծիսագիտաց որ արեւելեան բոլոր պատարագամատուցաց համաձայն է (հմմտ. ի միջի այլոց Ռուսերէնինը) հայերէնի Կոչման աղօթքն ալ, "Երկիր պագանեմք եւ աղաչեմք եւ խնդրեմք ի քէն բարերար Աստուած՝ առաքեա ի մեզ եւ յառաջի եդեալ ընծայս յայս զմշտնջենաւորակից քո եւ զէակից սուրբ Հոգիդ: Որով զհացս օրհնեալ մարմին ճշմարտապէս արասցես (A արասցէ) Տեառն մերոյ... Եւ զբաժակս օրհնեալ արիւն ստուգապէս արասցես„ եւն: Հռոմայ եւ անկէ ամէն Ա. խմբի տպագրութեանց մէջն է՝ "Որով զհաց (զբաժակ) օրհնեալ մարմին (արիւն)... արարեր Տեառն մերոյ„ եւն: Թէ "արարեր„ կատարեալ եղանակն ամենեւին չի յարմարիր հոս եւ ոչ ալ յունին համաձայն է, (հմմտ. ի միջի այլոց Ռուսերէնինը καὶ ποίησον τὸν μὲν ἄρτον τοῦτον, τίμιον σῶμα τοῦ Χριστοῦ, κτλ. Բարսեղինը տես վերը՝ էջ 142—43) յայտնի է ամէն ծիսագիտի: Զարմանալին այն է որ մինչ բոլոր ուրիշ պատարագամատոյցներու այս բանաձեւն անաղարտ մնացած է Հռոմ եւ այլուր եղած բազմաթիւ հրատարակութեանց մէջ, միայն մերինն է որ փոփոխութիւն մը կրած է Հռոմայ եւ անոր հետեւող տպագրութեանց մէջ. եւ չի կրնար ըսուիլ թէ Հայոց քով աւելի վտանգ կար այս բանաձեւէն սխալ վարդապետութիւն մը հետեւցընելու քան Յունաց, որոնց յետոյ քով այդէն տիրող է նոյն սխալ կարծիքը: Սակայն հոս ինքը Բարսեղեան չէ փոփոխողը. նոյնն անշուշտ կար իւր օրինակին մէջ, ինչպէս կայ նոյնը Թ. 435 Լեհահայոց Խորհրդատետրին մէջ 1677էն յառաջ: Յամենայն դէպս վտանգի երկիւղն է եղած յիշեալ անյարմարութեան պատճառը, որով լեզուին խանգա-

---

[1] Այսպէս՝ Նարեկացւոյ աղօթից մէջ տպուած է "...զանցեալսն եւ զգալոցսն, անտուերապար„ եւն, փոխանակ ըլլալու "զանցեալսն եւ զգալոցսն, զեղեալսն եւ զոր յուսացեալսն, անտուերապար„ եւն, դուրս ինկած են նոտրգիր բառերն (նոյնպէս UV), բայց Թարգմանուած լատիններէն մէջ. Տ տպագիրն աւելի աղաւաղ է կարդալով "զանցեալսն, եւ զգալոցն զեղեալսն անտուերապար„ եւն: — Կանոնին մէջն է հոն "վասն զի ինքնդ բաշխի ի միջի մերում„ եւն՝ փոխանակ "վասն զի ինքնդ ես բաշխող եւ նոյն ինքդ բաշխի„ եւն: Նոտրագիրք դուրս ինկած են տպագրութիւնէն (նոյնպէս U), բայց Թարգմանութեան մէջ առնուած: — Այս կարգի անճշդութիւնք՝ թէեւ տպագրութեանց անցած իբրեւ հաստատուն բնագրի մասեր, պարզ սխալմունք են:

*րուած է մեր մէջ Հոգւոյ սրբոյ կոչման՝ թէեւ բացարձակապէս ոչ անհրաժեշտ եւ էական, ինչպէս կ՚ուզեն Յոյնք, բայց ստուգիւ յարմար եւ նաեւ ըստ ուղիղ իմաստին կարեւոր բանաձեւը։ Թէ ինչ իմաստ, նշանակութիւն եւ կարեւորութիւն ունի այս բանաձեւը, աստուածաբանական խնդիր մըն է, որուն վրայ մեր ծրագրէն դուրս է խօսիլ, եւ որուն վրայ այնչափ նշանաւոր գիտնականք ճառած են։*[1]

*Ասոնք են Հռոմայ տպագրութեան շեղող գլխաւոր կէտերը, որոնք սակայն միայն մասամբ անցած են Ա. խմբի տպագրութեանց։ Այս ամենուն մասին շատ կողմանէ ընտիր գիրք մ՚ալ արդէն լոյս տեսած է՝ իտալերէն լեզուաւ՝ ի Վենետիկ 1868ին, հեղինակին՝ Հ. Գ. Վարդապետի Աւետիքեան՝ մահուանէ երկար տարիներ ետքը։*[2] *Տատ սրբագրութիւն՝ որուն պատճառն անըմբռնելի կ՚երեւայ ընթերցողին, հոն պարզուած է լիովին. այս ամենուն ներքեւ ծածուկ սխալ կամ մոլորութեան գոնէ նշոյլ մը տեսնել կարծած կամ կասկածած է Բարսեղ՝ յաճախ հայերէնը պարզապէս չհասկընալով։ Եւ այսպիսի անձ մ՚եղած է դժբախտաբար սրբագրիչ մեր եկեղեցական գրքերուն ամենէն կարեւորին։*

*Սակայն պէտք չէ նաեւ իրերը չափազանցել։ Ոչ ամէն տարբերութիւն որ կայ Հռոմի եւ միւս տպագրութեանց կամ Ա եւ Բ խմբի օրինակաց մէջ, պէտք է անմիջապէս կամաւոր փոփոխութիւն կամ սրբագրութիւն համարիլ։ Ի՞նչ վիճակ ունին՝ այս նկատմամբ՝ նոյն իսկ ձեռագիրները, որոնք դարէ դար անընդհատ զարգացում կամ փոփոխութիւն կը ցուցնեն բնագրին։ Եթէ այսպէս անխտրան են ձեռագիրները, (— հմմտ. միայն յաջորդ համեմատութիւնքն, —) իրաւունք չունինք մէկ խմբին ընթերցումն անոր համար միայն մերժել, վասն զի միւս խումբն այլազգ ունի, ըլլայ նոյնը Հռոմ, Վենետիկ, Վիեննա կամ թէ Կ. Պոլիս, Երուսաղէմ եւ այլուր տպուած։ Տատերէն միայն քանի մ՚օրինակ յիշենք։ Հռոմի եւ Ա. խմբի տպագրութեանց մէջ չկայ ճաշակման ժամանակ ըսելի սա տները "[illegible]... [illegible]... [illegible]..." տներ՝ որ արդէն իսկ կային Հռոմի 1642ի տպագրութեան մէջ. (էջ 108։) Անշուշտ շատ ձեռագիրներ (զոր օրինակ BDF) ունին նոյնը, ինչպէս նաեւ Բ. խմբի տպագիրներ (այսպէս PQ), բայց նաեւ ոչ նուազ հին ձեռագիրներ AC եւ նոյն Բ. խմբի OS տպագիրները (Կ. Պ. 1706 եւ Վենետ. 1686) չունին։ Ինչո՞ւ դատուենք ուրեմն Բարսեղեանի օրինակն այս մասը չունենալուն համար։ — Կամ՝ երկրորդ օրինակ մը բերելու համար՝ գովութեա՞ն արժանի են ստուգիւ Հռոմի եւ միւս ամէն տպագրութիւնք անոր համար որ ճաշակմանէ յառաջ "Յովհաննու Ոսկեբերանի" երկար աղօթքն — այնտեղւոյ բոլորովին անյարմար — պահած են անվթար՝ ինչպէս հին C ձեռագրի՝ նոյնպէս Բ. խմբի ամէն տպագիրներու համեմատ, մինչդեռ ABDF ձեռագիրք չունին։ Եթէ Բարսեղեան՝ իւր շատ մ՚անմիտ սրբագրութեանց տեղ՝ այս աղօթքը դուրս թողուր եւ կամ գոնէ աւելի պատշաճ տեղ դասաւորէր՝ իւր*

---

[1] Հմմտ. ի միջի բազմաթիւ այլոց՝ L. A. Hoppe, Die Epiklesis der griechischen und orientalischen Liturgien etc. Schaffhausen 1864, 8° pp. 336. Տես նաեւ վերն՝ էջ 160—62. Նոյնպէս Աւետիքեանցի յաջորդ գործը՝ էջ 322—75։

[2] „Sulle Correzioni fatte ai libri ecclesiastici Armeni nell' anno 1677. Opera postuma del P. Gabriele Dott. Avedichian“ etc. Venezia 1868, 8° pp. 424. Պատարագի սրբագրութեանց վրայ մի առ մի՝ էջ 52—118, 263—424. Ժամուց վրայ յաւելուած՝ էջ 310—22։

*սրբագրութեանց լաւագոյնն անշուշտ պիտի ըլլայ — PQ (կամ տպ. Կ. Պ. 1787 եւ Երուսաղէմ 1873) Զգեստաւորման աղօթքները բոլորովին տարբեր կարգաւ ունին, բաղպանինը՝ կրկին, աւելցընելով նաեւ "վակասի„ եւ նոյն իսկ "Թաշկինակի„ աղօթքներ։ Բոլոր ձեռագրաց եւ տպագրաց հանդէպ՝ որչափ մեզ ծանօթ է՝ B. խմբի PQ տպագրութեանց յատուկ է այս բանս, մինչ նոյն խմբի OS նոյնպէս չեն։ Եւ սակայն ոչ ոք կարծած է թէ նոյն օրինակաց տպագրիչք կամաւ փոխած ըլլան հոս, մինչ ուրիշ տեղեր միշտ հաւատարիմ մնացած են։ — Աշխար եւ գինի առնելու առեն Հռոմի եւ միւս տպագրութիւնք ունին միայն սա խօսքերը՝ (հացին) "Ցիշատակ Տեառն մերոյ Ցիսուսի Քրիստոսի„ եւ (գինւոյն) "Ցղ. յիշատակ փրկագործ տնօրէնութեան„ եւն։ Հոս PQ ունին կից՝ առաջնոյն "Որ Բարձեալ հանգչի„ եւն, երկրորդին՝ "Որ է կողմնաւրեան աշխարհին„ եւն։ Ո՞ւր է սոնց լաւագոյնը։ PQի կողմն են FGIJKN ձեռագիրք, իսկ Հռոմայ տպագրութեան՝ ACDEHN եւ տպագիրններններէն OS։ Ուրեմն Բարսեղեանի ձեռագիրը վերջին կարգէն էր, մինչ PQի օրինակն առաջնէն։*

*Ա՛յս է արդեամբք բուն պատճառն Ա. եւ B. խմբի տարբերութեանց մեծ մասին։ Բարսեղեանի հրատարակութեան վրայ չափազանց անվստահութիւնը յառաջ եկած է պարզապէս մէկ սխալ կարծիքէ մը, որմէ ազատ եղած չեն մինչեւ անգամ Աւետիքեանի պէս հմուտ անձինք. այն թէ մեր պատարագը բոլորովին նոյն է ամէն ձեռագիրներու մէջ, եւ այն՝ հնագոյն դարերէն ի վեր. սխալ մ'որուն վրայ հոս կրկին խօսիլ աւելորդ է։ Մտածենք դարձեալ այն անհաստատ վիճակն՝ զոր ունէր 1677էն յառաջ մեր պատարագն՝ գրեթէ ամէն ձեռագիր իւր յատուկ շեղումներն ունենալով։ Արդ անշուշտ լաւ չէ ըրած Բարսեղեան՝ օրինակ մ'առնելով եւ այն ալ աւելի աղաւաղելով իւր յաճախ անճահ սրբագրութիւններով։ Ենթադրենք սակայն որ՝ հետեւելով Աւետիքեանի խորհուրդին (p. 320)՝ առնուր Բարսեղեանի իւր առջեւ ընենք մեր առջեւն եղած իբր 30 ձեռագիրներն, եւ այնպէս ուղղագոյն բնագիր մը յարդարէր։ Բայց այս ուղղագոյն բնագիրն ո՞ր ձեռագրին համեմատ կ'ըլլայ, Լիոնեա՛նին, Նիլեկեա՛նին (BDF) թէ AC կամ միւսներուն։ Լուսաւորեա՝ եւ ո՛չ մեկնեան. ուրեմն յառաջ եկածը նոր խմբագրութիւն մը կ'ըլլայ միայն։ Այլազգ ալ կարելի չէր՝ հաստատուն ձեւ մը տակաւին պակսելով։ Այսօրս իրը տարբեր է։ Մեր Սովորականն որոշ եւ հաստատուն ձեւ մ'առած է արդէն նոյն ժամանակէն ի վեր, մնալով միայն քանի մը տարբերութիւն՝ որ երկու խմբոց միոյն եւ միւսին կը վերաբերին. իսկ ձեռագրաց տարբերութիւնք մին կամ միւսը ճշդելու, եւ ընթերցուածոց հնութիւնն ու պէսպիսութիւնը ցուցընելու եւն կը ծառայեն։ Եւ Հռոմի տպագրութիւնը՝ կ'ընենք համարձակ՝ իւր ամէն պակասութեամբք հանդերձ, ունեցած է այս նկատմամբ ամենամեծ արժէք, նոյն ձեւն ու կերպն ընդհանրացընելով ուղղակի կամ անուղղակի. վասն զի նաեւ B. խմբի տպագիրք ազատ չեն անոր ազդեցութենէն։ Անտարակոյս այս ազդեցութիւն ու օգուտն աւելի մեծ կ'ըլլար, եթէ աւելի շրջահայեաց, ծիսական հնութեան եւ նոյն իսկ հայերէն լեզուի աւելի հմուտ մէկը յանձարարած ըլլային Հռոմայ նոյն տպագրութիւնը գլուխ հանելու իբր սատակ։*

*Բաղձալի էր աւելի տեղեկութիւն ունենալ թէ ի՛նչ ձեռագիր էր Բարսեղեանի գործածածն, եւ ի՛նչ՝ B. խմբի առաջին տպագրութեանն. վասն զի այս երկուքէն են բոլոր միւսները։ Բարսեղեանի օրինակին համար կրնանք թերեւս*

ընդունիլ թէ Լեհաստան գործածուածներէն մին էր։ Այն երկրէն էր որ ամէնէն աւելի յանձնարարութիւն եղած էր Հռոմայ նոյն անձին համար, եւ այն տեղւոյ Հայք էին նոյն տպագրութեան գլխաւոր խնդրողները։ Թերեւս աւելորդ չէ մատնանիշ ընել առ այս կէտի մ'ալ։ Մեզի ծանօթ բոլոր ձեռագրաց մէջ չկայ Պատարագին վերջը Յովհաննու Աւետարանէ սկզբան մասին ընթերցումը՝ Լատինականին նոր սովորութեան համեմատ (տես վերն էջ 466, ծան. 51.) միայն Լէհահայոց պատարագի ձեռագիրք ունին նոյնը, ոչ միայն Թ. 438, 448 եւն, այլ նաեւ Թ. 435, որ 1677էն յառաջ գրուած եւ այն սրբագրութիւններէն զերծ է. երեւոյթ մ'որ ճշդիւ կը նմանի վերը յիշուած Հոգւոյ Կոչման աղօթքի «տրարբէր» նշանաւոր ընթերցուածին, զոր նոյնպէս ունէր Թ. 435 ալ։ Ասոնք կարծենք փոքր նշաններ չեն՝ Բարսեղեանի ձեռագրին հայրենիքը ցուցընելու համար։

Աւելի դժուարին է Բ. խմբի սկզբնական ձեռագիրը ճանչնալ։ Կը խոստովանինք որ մեզի դժուարին կ'երեւայ հաւատալ թէ այն տպագրութիւնը լիովին ու ծայրէ ծայր ձեռագրի մը համեմատ եղած ըլլայ։ Եթէ չենք սխալիր ձեռագիրը գործածուած է պարզապէս Բարսեղեանի հրատարակութեան սրբագրութիւնքը վերստին նախնականին դարձընելու եւ մէկ քանի պակասորդները լրացընելու, միւս ամէն մասերը պահելով Հռոմի տպագրութեան համեմատ։ Այլապէս ուստի՞ ունի նոյն տպագրութիւնն (եւ անկէ առեալ բոլոր յաջորդք) օրինակի համար՝ յիշեալ վերջին աւետարանն Բարսեղեանի տպագրին պէս. որով այս՝ նաեւ Լատինացւոց քով նոր՝ սովորութիւնն ընդհանրացած է բոլոր Հայոց մէջ ալ։ Եւ այս կէտը միայն բաւական է Հռոմի տպագրութեան ազդեցութիւնը ցուցընելու։

---

Չենք գիտեր թէ Բ խումբն նաեւ փոքր կապ մ'ունի՞ տպագրութեան մը հետ, որ յիշեալ բոլոր տպագրութեանց հնագոյններէն ալ մէկուկէս դար աւելի հին է, եւ ընդհանրապէս հայ տպագրութեան երախայրեաց դասէն։ ԺԶ դարու սկիզբն 1513ին եղած այս տպագրութեան վրայ դժբախտաբար քիչ ծանօթութիւն ունինք։ Նոյնը ծանօթացաւ դիտնոց Տ. Վ. Պալեանի մէկ յօդուածովն՝ «Հայ տպագրութեան ամենահին երախայրիք մ'ալ։[1]» Տպագիրս որ գտնուած է Պալակասի գեղջ ծերունի քահանայի մը քովը՝ Պատարագամատոյց, Ուրբաթագիրք եւ Տաղարան է միասին կազմուած, առաջինը կրելով սա խորագիրն՝ (Թղ. 1ա) «Պատարագատետր է սա Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ,» եւ կ'աւարտի (Թղ. 44ա) սա յիշատակարանաւ՝ «Գրեցաւ սուրբ տառս ի Ջ.ԿԲ. (= 1513) ի աստուածապահ քաղաքս ի Վէնէժ որ ի Վէնէտիկ Փռանգստեան. ձեռամբ մեղապարտ Յակոբին. ովոր կարդայք մեղաց թողութիւն խն[դ]րեցէք Աստուծոյ։» Յակոբեան տպագրութիւնս («գրեցաւ.»՝ տպագրեցաւ իմաստով է,) միւս նոր ծանօթացած երախայրեաց պէս Վենետիկ տպուած է 1513ին միեւնոյնը տպարանը, որուն նշանագրոշմն էր D. I. Z. A. Տպագրիս նկատմամբ աւելի մանրամասնութիւնք տեսնելու է յիշեալ տեղը. իսկ ներքնոյն մասին կը բաղձայինք գոնէ աւելի տեղեկութիւն ունենալ։ Ծանօթացընողը կ'ըսէ. «Այժմեայ ընդհանրապէս գործածուած Պատարագամատուցի եւ ասոր

[1] «Հանդէս Ամս.» 1894, Դեկտ. էջ 357—61 եւ անոր կից Դիտողութիւնքն Հ. Գ. Գալէմքեարեանի՝ անդ, էջ 361—63, համադրեալ ցուցակաւ տպագրութեանց Երախայրեաց։

*մէջ Բառական փոփոխութիւններ կը նշմարուին:„ Եւ այս կը հաստատուի այն մէկ էջին ընթերցուածովն ալ՝ որ նմանահանութեամբ հրատարակուած է նոյն տեղը. ("Հանդէս„, անդ, 358:) Աւելորդ չենք համարիր յառաջ բերել այդ էջը (— պատուով եղածները մենք ամբողջ կը գրենք. —) "...[Մ]արմնն Քրիստոսի. Երկու յետոյ բոլորն եւ այլ մատեանքն ըստ նմին ձեւին. Եւ այսպէս վերացուցանէ զնին սուրբ մարմինն է փեառոնին ժողովրդեանն, առեալ բարձր յայնի, Ի սուրբ ի սուրբ ի սուրբ պատուական մարմնոյ եւ արեանէ տեառն մերոյ եւ փրկչին յիսուսի քրիստոսի. Ճաշակեսցուք սրբութեամբ որ իջեալ երկնից բաշխի ի միջի մերում: Սա է կեանք յոյս սրութ[եան] ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց մերոց: Դպհ. առէ. Սաղմոս ասացէք տեառն աստուծոյ մերոյ, սաղմոս ասացէք երկնաւոր թագաւորին մերոյ յանմահին, որ...„: — Արդեամբք այս կտորիս իրատագիրը համաձայն չէ բոլոր ձեռագիր եւ տպագիր օրինակաց հետ. բնագիրն ալ զարտուղութիւն ունի, այսպէս՝ "...ի թողութիւն մեղաց Տերոց„: Տպագիրս կը տարբերի նաեւ իրեն հասակակից (1512ին գրուած) C ձեռագրէն: — Կը ցաւինք որ այս ամէնէն հնագոյն տպագիր Խորհրդատետրը համեմատութեանց մէջ չկրցանք գործածել:*

---

*Զանացինք մինչեւ հոս մեր Սովորականին կերպարանափոխութեանց ընթացքը ներկայացնել մեր ընթերցողաց, Լամբրոնեան Խորհրդատետրէն եալքը մինչեւ մեր ժամանակները: Աւելի մանրամանութեանց մէջ մտնել, եթէ չէինք ուզեր այս արդէն երկար ներածութիւնը կրկնապատկել, կարելի ալ չէր: Շատ բան կրնայ արդէն հետեւցընել ամէն բանասէր որ յաջորդ հրատարակութեան համեմատութիւնքն ուսումնասիրել ուզէ, մտադիր ըլլալով նշանակուած ձեռագրաց հնութեան:*

*Ցաջորդովս կը դնենք մեր Սովորականին բնագիրն, այնպէս՝ ինչպէս այսօր հասարակ եղած է բոլոր հայ եկեղեցեաց մէջ: Մեր նպատակը չէր կրնար ըլլալ ընտրել այս կամ այն հին ձեռագիրն եւ անոր ներկայացընել իբրեւ Հայոց բուն պատարագը. բայց եւ ոչ Ա. կամ Բ. խմբի որեւէ օրինակ մ'առնուլ եւ տպագրել, մէկին կամ միւսին նախապատուութիւն տալով: Այս պատճառաւ բնագիրս շատ անգամ տարբերութիւններ կը ցուցընէ այս կամ այն տպագրութիւնէն, ի հարկէ այն տեղերը միայն, որ խնդրոյ տակ են՝ ըստպէս ըլլալով Ա. եւ Բ. խմբի մէջ. ընտրութիւնն եղած է այնպէս՝ ինչպէս յարմար եւ տեղւոյն պատշաճ երեւցաւ: Բաց աստի արդէն ամէն տեղւոյ ձեռագիր եւ տպագիր օրինակաց տարբեր ընթերցումները նշանակուած են համեմատութեանց մէջ: Կ'ենթադրուի որ յաջորդ բնագիրն մեր Սովորականին՝ այսպէս ըսենք՝ ուսումնական վերակազմութիւն ըլլալով եւ ոչ թէ առօրեայ գործածութեան համար պատրաստուած, ձեռագրաց ընթերցուածոց աւելի մտադրութիւն կրնայինք ընել: Բայց եւ այնպէս յէականս տարբեր չէ, եւ չէր կրնար ըլլալ, բնագիրն՝ երկու խմբի որեւէ տպագրութենէ:*

*Բնագիրը լիակատար է, այսինքն ոչ միայն Խորհրդատետր, այլ եւ Կարգ դպրութեան կամ Սարկաւագականքն* (diakonica) *միանգամայն՝ իրենց պատշաճ տեղը, այնպէս ինչպէս էր* J *ձեռագիրը եւ աւելի եւս Վիեննայի* 1826*ի տպագրութիւնն կամ Աւգերեանի հայ.-իտալ. հրատարակութիւնն (զոր օր. տպ.*

1832։) Դուրս թողուած է միայն երկու կարգ բան, ճաշու շարականք եւ ճաշու մեսեդիք եւ ալէլուք, զորոնք եթէ առնէինք լիակատար՝ բնագրին ծաւալը կրկնապատկել պէտք պիտի ըլլար։ Նոյները կրնան տեսնուիլ բազմաթիւ հրատարակութեանց մէջ. (տես տպ. Վիեննա. 1826, էջ 81 եւն, տպ. Թրիեստ 1785 իրենց իւրաքանչիւր տեղը, Տաղարան տպ. Երուսաղէմ 1882 էջ 47—104 նոյնպէս իրենց իւրաքանչիւր տեղը, եւն եւն։)

Համեմատուած են մեր ձեռքն եղած ամէն ձեռագիրքն, որոնց վրայ վերը խօսեցանք։ Համեմատութեանց արդէն շատ մեծ ծաւալը շատ տեղ չընդարձակելու համար՝ պէտք չտեսանք վերը մի առ մի յիշուած բազմաթիւ տպագիրները համեմատել որ աւելորդ ալ էր։ Տպագիրք՝ նոյն խմբի մէջ՝ մէկը միւսէն աննշան տարբերութիւններ միայն ունին։ Շատացանք իբր 20 օրինակ համեմատելով եւ այն երկու խմբէն ալ, թէ հնագոյններէն եւ թէ նորերէն

Նոյն նպատակաւ ձեռագրաց եւ նաեւ տպագրաց ամէն մանր ու հանրածանօթ ուղղագրական խոտորում չնշանակեցինք։ Օրինակ՝ գրեթէ բոլոր ձեռագիրք -ու- ուղղագրութիւնն ունին, (BCGN -ու- եւ օ, HJ միայն օ), տպագիրք աւելի օ եւն։ Ոչ միայն ձեռագիրք, այլ եւ շատ տպագիրք ունին -ւոյ, -ոյ եւն, ուրիշները՝ -ւո, -ու. կամ խնամօղ, խնամող եւ խնամ-ող. հրամայականն -ոյ, -եայ եւ -ո եւ -եա, եւ այլ նմաններ։ Կրկնապատկել պէտք կ՚ըլլար համեմատութիւնքն, եթէ 50է աւելի օրինակացս այս ամէն պէսպիսութիւնքը նշանակել ուզէինք։

Ղամբրոնեան բնագիրը վերը լիակատար դրած ըլլալով, նոյն խմբի յատուկ ընթերցուածները հոս կրկնել աննպատակ էր։ Բայց երբ ընթերցուածի մը հնութեան վրայ խնդիր ըլլայ՝ պէտք չէ մոռցուիլ Ղամբրոնեանն եւ իւր խմբի պատկանողներն, ինչպէս նաեւ Խօսրովեանն։ Առաջիկայ երկասիրութեանս մէջ դիւրին է ուզած ատեն գտնել բանալ նոյն բնագիրը։ — Նոյնպէս Լեւոնեան եւ Կիլիկեան (BDFL) ձեռագրաց այն ամէն առանձնայատկութիւնք, որ վերն ուրոյն դրուեցան, հոս կրկնուած չեն, ինչպէս բնական է։

Ձեռագիրքն եւ տպագիրքը նշանակուած են այլեւայլ համառօտութիւններով։ Ասոնց իւրաքանչիւրին նշանակութիւնը տեսնելու է յաջորդ ցուցակին մէջ, ուր կը տեսնուի նաեւ թէ ինչ օրինակներ գործածած ենք համեմատութեան համար։

---

# ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՔ

## Ա. ԽՈՐՀՐԴԱՏԵՏՔ

### 1. ՁԵՌԱԳԻՐՔ

A = Թ. 428. (ՊՀԶ = 1427։)
B = Օրինակ Ցղանց անապատի. (ՋԻԳ. = 1474։)
C = Օրինակ Մակուց. (ՋԿԱ = 1512։)
D = Թ. 544. (ԺԴ—ԺԵ դար։)
E = Թ. 196. (ՌԽԲ = 1593։)
F = Թ. 333. (ՌԿԷ = 1618։)
G = Թ. 195. (ՌՀԷ = 1628։)
H = Թ. 193. (ՌՂԸ = 1649։)
I = Օրինակ Աստուր սարկաւագի, $I^2$ անոր Կարգ դպրութեանն. (ՌՂԷ = 1648։)
J = Թ. 267. (ՌՃԺ—ԻԱ = 1661—72), հանդերձ Կարգաւ Դպրութեան։
K = Թ. 406. (ՌՃԺԳ = 1664։)
L = Լիոնեան օրինակն. (1313ին։)
M = Մոնաքեան օրինակն. վերջին գրութիւնն ՊՀԶ = 1427—32։)
N = Թ. 388. (ԺԷ—ԺԸ դար։)
$N^2$ = Թ. 531. (ԺԷ—ԺԸ դար։)

### 2. ՏՊԱԳԻՐՔ

O = Տպ. Կ. Պոլիս, 1706. (Երկրորդ խմբէ։)
P = Տպ. Կ. Պոլ. 1787. (Երկրորդ խմբէ։)
Q = Տպ. Երուսաղէմ 1873. (Երկրորդ խմբէ։)
R = Տպ. Հռոմ 1677. $R^2$ անոր "Սպասաւորութիւն." (Ա. խմբէ։)
S = Տպ. Վենետիկ 1686, Սահրատեան. (Բ. խմբէ։)
T = Տպ. Թրիեստ, 1803. (Ա. խմբէն։)
U = Տպ. Վենետ. 1741, Մխիթար Աբբահօր. (Ա. խմբէ.) ճիշդ = R։
V = Տպ. Վենետ. 1823. (Նոյն՝ 1874. Ա խմբէ։)
$V^2$ = Տպ. Վենետ. 1826. (Խորհրդատետր եւ Կարգ դպրութեան.) Նոյն՝ Հրտ. Աւետիքեան 1832, եւն եւն։
W = Տպ. Վիեննա 1858. (Ա. խմբէ։)
X = Տպ. Վիեննա 1879, օրինակն Պատրիարքարանի Կ. Պոլսոյ։

## Բ. ԿԱՐԳ ԴՊՐՈՒԹԵԱՆ

### 1. ՁԵՌԱԳԻՐՔ ԴՊՐՈՒԹԵԱՆ

a = Թ. 69. (ՌՃԺԱ = 1662.) ընդարձակ։
b = Թ. 158. (ՌՃԻԲ = 1673—81.) ընդարձակ։
c = Թ. 393. (ՌՃԼԹ = 1690.) համառօտ, Լեհ.։
d = Թ. 404. (ՌՃԶ = 1657.) համառօտ։
e = Թ. 411. (ՌՃԺԸ = 1669.) ընդարձակ։
f = 413. (ԺԵ—ԺԶ դար.) համառօտ։
g = Թ. 426. (ՌՁԲ = 1633.) ընդարձակ։
h = Թ. 451. (ՌՃԺԳ = 1664.) համառօտ։
i = Թ. 491. (ԺԷ—ԺԸ դար.) համառօտ., Լեհ.։
j = Թ. 538. (ՌՃԽԷ = 1698), ընդարձակ, Լեհ.։ Համմտ. նաեւ $I^2$, J եւ A—$N^2$ ձեռագրաց Սարկաւագաց եւ Դպրաց մասերը։

### 2. ՁԵՌԱԳԻՐ ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

k = Թ. 183. (ՉՂԹ = 1340։)
l = Թ. 206. (ԺԴ—ԺԵ դար։)
m = Թ. 401. (ԺԷ—ԺԸ դար։)
n = Թ. 403. (ՋԼԳ = 1484։)
o = Թ. 419. (ՊՀ = 1421։)
p = Թ. 423. (ԺԴ—ԺԵ դար։)
q = Թ. 432. (ՌՂ = 1641։)
r = Թ. 176. (ԺԷ - ԺԸ դար.) Մեղեդիք։

### 3. ՏՊԱԳԻՐՔ ԴՊՐՈՒԹԵԱՆ

s = Գիրք Դպրութեան եւ Տաղարան, Կ. Պ. 1738. (Նոյնք՝ 1710, 1723 եւ 1730 կամ $s^2$—4։)
t = "Սպասաւորութիւն" եւն Թրիեստ 1785 (4°) Նոյն՝ 12° կամ փոքրադիրն ($t^2$։)
v = Տաղարան, տպ. Երուսաղէմ 1882։ — Տես նաեւ R', $V^2$։

# Բ.

## ԲՆԱԳԻՐ ՍՈՎՈՐԱԿԱՆ ՊԱՏԱՐԱԳԻ ՀԱՅՈՑ

—

## Ա. ԶԳԵՍՏԱՒՈՐՈՒԹԻՒՆ

*ԱՒՐԷՆՔ ԱՐԿԱՆԵԼՈՑ ՍՊԱՍ ԵԿԵՂԵՑՒՈՑ*

*Յորժամ կամիցի քահանայն պատարագ մատուցանել, պարտ է այսպէս խորհրդաբար զգեստաւորել: Մտցէ յաւանդատունն հանդերձ սարկաւագօքն, ուր զգեստքն են պատարագի: Եւ զգեցեալ պաշտամանէիցն ըստ իւրաքանչիւր աստիճանի, ասասցեն սաղմոս.* **ՃԼԱ.** *Կցուրդ.* **Քահանայք քո**

Համեմատութեանցս կերպին եւ ձեւալին մասին տես նախընթաց Ծեղեկութիւնքն: L եւ BDF ձեռագրաց այն ընթերցուածներն ու այլակերպութիւնքն, զոր վերը դրինք առանձինն, հոս կրկնուած չեն, այլ ինքն ի մանաւորի խորատագիրքն: "Զգեստաւորութիւն„ եւն խորագիրքն եւ Ա, Բ, Գ. եւն բաժանմունք մեզմէ են: Բայց ի վերոյիշեալ համառօտութիւններէն կը գործածենք նաեւ ՏՊ. (ամէն տպագիրք միակերպ), ՏԱ (տպագիրք Ա. խմբի), ՏԲ (տպագիրք Բ. խմբի), 22 (ամէն ձեռագիրք միաբան), կամ եթէ աւելի որոշել պէտք ըլլայ՝ Ձխ (ձեռագիր Խորհրդատետրներ) եւ ՁԿ (ձեռագիրք Կարգի դպրութեան:) Ջանացինք համեմատութիւնքս ըստ կարի համառօտ ընելու, բայց առանց կարեւոր բան մը դուրս թողլու. քանի մը ձեռագրաց սխալագրութիւնք մի առ մի նշանակել աւելորդ էր: X (տպ. Վիեննա 1879) բնագրի նորահնար խորատագիրք չեն դրուած: Միանգամ ընենք որ բոլոր խորատագիրներու մէջ տպագիրք բայերը ապառնի եղանակաւ ունին (ուստի՝ "Մտցէ յաւանդատունն. ասասցեն, զգեցցեն„ եւն եւն), իսկ ձեռագիրք առ հասարակ ներկայ, ուստի "Մտանէ, ասեն, զգենուն„ եւն եւն: Մենք պահեցինք տպագրաց ընթերցուածն, առանց պէտք տեսնելու ամէն անգամ եւ ամէն տեղ կրկնելու ձեռագրաց այս միօրինակ ընթերցումը, բայց միայն ուր կարեւոր էր. սակայն գոնէ մէկ երկու ձեռագիր յանուանէ նշանակուած է միշտ (կցելով "այլ 22„): Զարտուղութիւնք նշանակուած են ի հարկէ իրենց տեղը:

Պատրաստ. ‖[1] Խորագիրն՝ 22. եւ ՏՊ: IJ սկզբան մասերս չունին: G "սպասք եկեղեցւոյ.„ HK "ի սպասք„ եւն: ‖[3] "Կամիցի„ ըստ ՏՊ. եւ Fj. միւս 22 (ABCDEGHLMNN²) "կամեսցի.„ K "կամի:„ — Q "պարտի այսպէս„ եւն: — փխ. "Մտցէ„՝ ACEGHKMN "մտանէ„ (= BN². իսկ D "մտանեն.„ F "մտանել:„) — R զգեստն են (= F): "Պատարագի„ ՏՊ. եւ ACN². "պատարագին„՝ EGHKMN (= BDF.) — CH "Զգեցեալ պաշտօնէից„ եւն: — C այսպէս թերատ ունի սկիզբն. "Յորժամ կամեսցի քհն. պատարագ մատուցանել, մտանէ յաւանդատունն հանդերձ սարկաւագաւք, ուր...„: N² "...այսպէս խորհրդաբար մտանէ հանդերձ սարկաւագաւն եւ դպրաւն յաւանդատունն, ուր զգեստն են պատարագի. եւ Գ. ծունր կրկնէ քհ. եւ սկսանին Սղմ. Յիշեա Տէր զԴաւիթ„ եւն. (BDF տես վերը.) Նաեւ j ունի (միւս ՁԿ չունին) սկզբան մասս՝ "Յորժամ քհն. կամիցի պատարագ մատուցանել, պարտ է նմա այսպէս խորհրդաբար զգեստաւորել զգեստիւք: Յիշեա Տէր զԴաւիթ, եւն (լիակատար.) Շարական հանդերձ յորժամ քհն. զգենու եւ երգեցէ

զկեցցէն զարդարութիւն. եւ սուրբք քո ցնծալով ցնծասցեն: Փոխ. Յիշեա Տէր զԴաւիթ, եւ զամենայն հեզութիւն նորա: Տուն առ տուն ամենեքեան: Եւ քարոզեսցէ սարկաւագն. Եւ եւս խաղաղութեան զՏէր: — [Ժող. Տէր ողորմեա: — Սրկ.] Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ ի տեառնէ, զի զողորմութեան պշնորհս իւր առաքեսցէ ի վերայ մեր: Տէրն ամենակալ կեցուսցէ եւ ողորմեսցի: — [Ժող. Կեցո Տէր: Սրկ.] Ողորմեայ մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ: — Եւ ասասցեն երկոտասան Տէր ողորմեա:

Եւ քահանայն ասասցէ զաղօթս. Որ զգեցեալ ես զլոյս որպէս հանդերձ Տէր մեր Յիսուս Քրիստոս, անճառելի խոնարհութեամբ ի յերկրի երեւեցար, եւ ընդ մարդկան շրջեցար: Որ եղեր քահանայապետ յաւիտենից ըստ կարգին Մելքիսեդեկի, եւ զարդարեցեր զեկեղեցի քո սուրբ: Տէր ամենակալ որ պարգեւեցեր մեզ զնոյն զերկնային հանդերձ զգենուլ. ար-

---

երգեն զայս խորհուրդս ասելով. Խորհուրդ խորին, եւն: Զկնի երգին՝ քհն. յաւանդոյ զձեռն եւ ասէ, Աղմ. Լուսաւորեաց... Դաս արար (լիակատար) եւն: ‖6—8 “Ասասցեն ապա„ եւն. տպագրաց մեծ մասը (OPQSTUVW) լիակատար ունին “Յիշեա Տէր զԴաւիթ„ սաղմոսը, (տես W, էջ 3—4, եւն.) սակայն չունին “տուն առ տուն ամենեքեան„ խօսքը: Բայց այսպէս համառօտ՝ RV² եւ 22. (միայն j լիակատար:) A “եւ ասեն Աղմ. Քահանայք քո: Փոխ. Յիշեա Տէր. տուն առ տուն: Եւ սրկ. քարոզէ. Խնդրեսցուք„ եւն. (գրեթէ նոյնպէս BDF, տես վերն:) C “ապա ասեն աղմ. Քահանայք... տուն առ տուն ամենեքեան: Եւ սրկն. քարոզէ. Խնդրեսցուք„ եւն: GK “Եւ ասեն աղմ. ամենեքեան տուն առ տուն. Կց. Քահանայք քո... զարդարութիւն: Փոխ. Յիշեա Տէր զԴաւիթ: Եւ քարոզէ„ եւն: Նոյնպէս նաեւ EHMN “ասեն ապա (H չունի “ապա„) Աղմ. Քահանայք... տուն առ տուն ամենեքեան.„ (E “տուն առ տուն ամենեքեան:„) N² “Եւ սկսանին սաղմոս. Յիշեա Տէր զԴաւիթ: Եւ ապա քարոզէ սրկ. Խնդրեսցուք հաւատով,„ եւն: N ամենեւին չունի “ասասցեն ապա աղմ. ՃԼԱ„ բառերը: Տպագիրներէն R չունի “ՃԼԱ„ եւ “Կցորդ„ սակայն աւելի նման է ձեռագրաց: ‖9 KM եւ այլ 22 “Եւ քարոզէ Սրգ.„ (H չունի “եւ„:) — “Եւ եւս խաղ.„ եւն չունին շատ 22., այսպէս ACHGM. ընդ հակառակն փակագծեալն “Ժող. Տէր ող.„ եւն ունին միայն BDF. ‖10—12 “Խնդրեսցուք„ եւն քարոզս 22. համառօտիւ կը նշանակեն (հմմտ. ACFKN եւն:) N² այսպէս. “Եւ ապա քարոզէ սրկ. Խնդրեսցուք հաւատով: Դպիրքն ասեն. Կեցո Տէր: Քհ. ասէ Բժան Տէր ողորմեա„ եւն: ‖12 “Կեցուսցէ եւ ողորմեսցի„ ըստ PQSV², միւս տպագիրքը՝ սակայն RUTW (եւ BDE) “կեցո եւ ողորմեա„: — Փակագծեալը միայն BN² ունին. իսկ սարկաւագի “Ողորմեայ„ եւն միայն B, տպագիրներէն V²: ‖14 ACDEFGHKMN “եւ ասեն երկոտասան (կամ “ԺԲ„) Տէր ողորմեա.„ B “Ժող. ԺԲ Տէր ող.„ N² “Քհն. ասէ Բժան Տէր ող.:„ — PQS “...Տէր ողորմեայս:„ ‖15 Բոլոր 22. “Եւ քհն. ասէ զաղօթս.„ (DN “...զաղօթս լոյս.) միայն C “Եւ քհն. ասէ. Որ զգեցեալ„ եւն. N² “Խոնարհի եւ ասէ քհն. զաղօթս:„ Հոս կը սկսին I եւ J. վերջինս նախ “Խորհուրդ խորին„ տաղն, յետոյ “Աղօթք քահանայի. Որ զգեցեալ„ եւն: OPQS (կամ ՏԲ) չունին խորագիրս, այլ՝ “Աղօթք առանձնական պատարագիչ քահանային յառաջ քան զզգեստաւորելն. Որ զգեցեալ„ եւն: — Աղօթքիս սկիզբը պակասաւոր է ի DG, թուղթ ինկած ըլլալով: — “Որպէս հանդերձ„՝ բոլոր 22 (ABCEFHIJKMNN²) եւ ՏԲ (OPQS.) իսկ ՏԱ (կամ RTUVV²W եւն) “որպէս զհանդերձ„: ‖17 F “քհնյպ. ծնմոբեր„ գիս. “յաւիտենից:„

ժամի սյա եւ զիս ի ժամու յայսմիկ զանկիանն ծառայս քո որ համարձակիմ եւ մերձենամ ի նոյն հոգեւոր պաշտաւն փառաց քոց. որպէս զի զամենայն անիրաւութիւնս մերկացայց, որ է հանդերձ պղծութեան, եւ զարդարեցայց լուսով քով: Ընկեա յինէն զչարիս իմ, եւ թաւթափեա զյանցանս իմ. որպէս զի արժանի եղէց հանդերձեալ լուսոյդ առ ի քէն: Շնորհեա ինձ քահանայական փառաւք մտանել ի պաշտաւն սրբութեանց քոց ընդ այնոսիկ որք անմեղութեամբ պահեցին զպատուիրանս քո. զի եւ ես պատրաստ գտայց երկնաւոր առագաստին ընդ իմաստուն կուսանսն փառաւորել զքեզ Քրիստոս որ բարձեր զմեղս ամենեցուն: Զի դու ես սրբութիւն անձանց մերոց եւ քեզ բարերարիդ Աստուծոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս:

Եւ մատուցեալ սարկաւագունքն զգեցուցանեն նմա զհանդերձն սաղմոսելով: — Եւ դիցէ յառաջ զվակասն ի գլուխն, եւ ասասցէ. Դիր տէր սաղաւարտ փրկութեան ի գլուխ իմ, պատերազմել ընդ զաւրութիւնս թշնամւոյն: Շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք, իշխա-

‖ 19 «Զնոյն զերկնայէն հանդերձ»՝ բոլոր ՋՋ եւ տպագիրներէն OPQSVX, իսկ RTU$V^2$W «երկնայինս:» K$N^2$ «...հանդերձն:» ‖ 20 BF «զանկիառան ծառայս քո ի ժամուս յայսմիկ» ունին: — BFEK$N^2$ «որ համարձակիմս եւ մերձենամ» ունին: ‖ 22 C «զամենայն անիրաւութիւն» ունի: — «Որ է հանդերձ պղծութեան» բառ բոլոր ՋՋ եւ ՏԲ. իսկ ՏԱ (RTUV$V^2$W) «որք են հանդերձ պղծութեան»: ‖ 23 «Լուսով,» բառէն կը սկսի G (թղ. 81ա:) — «Լուսով քով» բոլոր ՏԳ. իսկ ՋՋ (ABCEFHIJKMN$N^2$) «լուսով քո» (կամ «քոյ:») ‖ 24 «Հանդերձեալ լուսոյդ» բառ բոլոր ՋՋ եւ ՏԲ (OPQS.) իսկ ՏԱ (RTUV$V^2$W) «հանդերձելոյ լուսոյդ:» ‖ 25 «Փառօք» բառով կը սկսի D (թղ. 113ա:) — $N^2$ «ի պաշտօն սրբութեան քո»: ‖ 27 A «...փառաւորել զքեզ Քրիստոս» ունի: ‖ 29 UV միշտ «վայել է», զոր այլուր չենք կրկներ: ‖ 30 Հոս կամ Զգեստաւորմանէն յառաջ աւելցուցած են TW յետամնաց Պատրաստութեան աղօթքներ՝ «Աղօթք առ սուրբ Աստուածածինն. Մայր Քրիստոսի» ունին, «Աղօթք առ սուրբն բառ սուրբն յիշատակի. Ո՛վ [illegible] այս անուն» ունին, «Գրիգորիոս ԺԱ պապն շնորհեաց... Եւ [illegible]» ունին: Ասոնցմէ ետքը կը գրուի «Սաղմոս ԻԵ. ԿԹ. Լուացայց» ունին: ՓԽ. Դատ արա» ունին (յիշատակ.) վերջինս նաեւ X «Յաւարտել լուացել զձեռս սաղմոսել զՍղմ. ԻԵ:» ‖ 31 B$N^2$ չունին խորագիրս. նոյնպէս J. DF տես վերը: — AEFHMN «Զգեստաւորութիւն.» միւսները բառ մը: ACEFIKMN «զգեցուցանեն:» GKN չունին «նմա»: FGIK «զհանդերձն.» C «զհանդերձ սաղմոս ասելով»: — «Սաղմոսելով» բառին տեղ PQS տպագիրք՝ «ասելով. Եւ ետ խաղաղութեան: Քհն. Օրհնութիւն: Եւ յետ օրհնութեան՝ դիցէ յառաջ զվակասն» ունին: Նոյնպէս միայն H «...զհանդերձն. Եւ ետ խղ. զՏէր ողորմ.: Եւ քհն. խաչակնքէ. Աւրհնութիւն եւ փառք: Եւ դնէ» ունի: ‖ 32 J չունի խորագիրս, այլ՝ «Վակասին. Դիր Տէր» ունի: ACEHMN «Եւ դնէ յառաջ (C չունի «յառաջ»)... եւ ասէ.» (E «եւ ասէ զդայ.») I «Եւ յառաջ դնէ... եւ ասէ.» GK «Եւ յառաջ դնեն զվակասն ի գլուխն որ է սաղաւարտ. Դիր» ունին: $N^2$ «Դնէ յառաջ զվակասն ի գլուխն. Դիր» ունի (= B, զոր եւ DF տես վերն:) ‖ 33 PQS եւ H «փրկութեանն:» — Գրեթէ բոլոր տպագիրք (OPQRSTUV) «պատերազմիլ.» միայն $V^2$WX «պատերազմել» բառ ՋՋ. (K «պատերազմելոյ:») ‖ 34 F$N^2$ «Շնորհաւք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիս-

նութիւն և պատիւ, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից. Ամէն: — Շապկին. Զգեցո ինձ տէր Հանդերձ փրկութեան, և պատմուճան ուրախութեան, և շուրջ պատեա զգեստովս փրկութեան: Շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: — Գաւտոյն. Շուրջ պատեսցէ կամար հաւատոյ զմէջս սրտի իմոյ և մտացս, և շիջուսցէ ի սմանէ զխորհուրդս աղտեղիս: Եւ զաւրութիւն շնորհաց քոց յամենայն ժամ բնակեսցէ ի սոսա: Շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: — Բազպանին. Տուր տէր զաւրութիւն ձեռին իմոյ, և լուա զամենայն աղտեղութիւնս իմ, որպէս զի կարաւղ լինիցիմ սպասաւորել քեզ անախտութեամբ հոգւոյ և մարմնոյ: Շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: — [Զերկոսին ձեռսն համբառնալով ի վեր ասէ. Սրբեա Տէր զձեռս իմ յամենայն մեղաց, համբառնալ առ քեզ սրբութեամբ և մաքրութեամբ: Շնորհաւք, ևն:] — Ուրարին.

տուր„ ևն: Նոյնպէս (կամ համառօտուած) զգեստաւորման յաջորդ ամէն աղօթից ծայրը: X ամէնէն վերջն ունի այս աղօթքն, առ կարգաւ ունենալով՝ "Յառաջ մատուցեալ՝ զգեցցի խորհրդաբար, նախ զՇապիկն առնլով. Զգեցո ինձ Տէր... Բազպանին... Փորուրարին... Գօտւոյն... Ապա ասցէ եւ զվակասն. Նափորտին որ է շուրջառ...: Սաղաւարտին. Դիր Տէր... Ցեռ զգեստաւորելոյ„ — Աղօթքներուս կարգը մերդրածին պէս ունի ձեռագիրք ABDEFGIJKMNN² եւ տպագրաց մեծ մասն (RSTUVV²W.) բայց BDFJN² նախ "Ուրարի„ աղօթքը կը դնեն, յետոյ "Բազպանին:„ Իսկ CH ձեռագիրք եւ O տպագիրն այսպէս՝ Խոյր, Շապիկ, Ուրար, Գօտի, Բազպան, Նափորտ. նոյնպէս նաեւ PQ, որոնք սակայն Բազպանին կրկին ունին, եւ ի վերջոյ՝ Վակասի եւ Թաշկինակի աղօթից կրկնութիւնք. (տես տող 42, 55:) ‖36 M չունի խրատագիրս "Շապկին.„ այլ այս եւ նախընթացը կից գրած: CHIJ "Շապկին.„ (J Շապկի, C Շապ.) GK "Շապկին է.„ BNN² "Շապկին ասէ„ (N² ասա.) A "Հանդերձին.„ E "Հանդերձին ասոյ.„ D "Հանդերձ որ է շապիք.„ F "Հանդերձին որ է շապիքն առնլով:„ ‖37 E "ուրախութեանն:„ — C "զգեստուքս փրկութեան.„ F "զգեստովս„, ևն: ‖38 ACE "Գաւտոյն.„ BN "Գաւտւոյն ասէ,„ (N² "գօտու ասէ.„) FM "Գաւտոյն է.„ (GK "գօտոյն է.„) D "Գաւտոյն ընդ մէջս:„ O չունի "Գօտւոյն:„ ‖39 "Եւ մտացս„ բառը չունին RUTW, ունին OPQSVV²X. նոյնպէս ամէն 22 "եւ զմտաց.„ (միայն CN² "եւ զմտացս:„) — V² "շիջուսցէ ի ոսցանէ„ (փխ. "ի սմանէ„ ըստ ՏԴ եւ 22, զոր օր. ACG ևն:) — K "...ի սմանէ զամենայն խորհուրդս աղտեղիս„ ևն: ‖40 A չունի "Եւ զաւրութիւն... ի սոսա„ կտորը: — E "զաւրութիւնն:„ — PQ "բնակեսցէ„ (OS "բնակեսցէ„ ըստ այլ ՏԴ եւ 22:) — D "բնակեսցէ ի նոսա:„ ‖41 D "Բազպանին ածելոյ ի բազուկն.„ F "Բազպաներոյն է.„ GK "Բազպաներոյն Բ. ձեռացն.„ J "Բազկուրարին.„ N "Բազկպանին.„ N² "Բազպնին ասէ:„ ‖42 A չունի "զամենայն„: M "զամենայն աղտեղութիւն„ ևն: — Տարբեր են միայն PQ՝ երկուքի բաժնելով. "Բազպան աջոյ ձեռին. Տուր Տէր զաւրութիւն աջոյ ձեռին իմոյ, ևն: Բազպան ահեկան ձեռին. Տուր Տէր զօրութիւն ձախոյ ձեռին իմոյ,„ ևն. (խօսքերը՝ նոյն, կրկնուած:) Նոյն կարգի կ'երեւայ F "Բազպաներոյն Լ. Տուր Տէր, ևն: Դարձեալ. Տուր Տէր զաւրութիւն ձե.:„ ‖44–46 Փակագծեալը կը կցեն FGK որոնցմէ առինք եւ դրինք. FK "զերկոսին ձեռս՚ն համբառնալով (K ի վեր) ասէ. Սրբեա Տէր զձեռն իմ„ ևն. միայն G "Ուրարի„ աղօթքէն ետքը կը դնէ: I ալ հոս՝ յետոյ լուսանցքի վրայ գրուած ունի՝ "Սրբեա Տէր զձեռս իմ ամբառնալ առ քեզ սրբութեամբ ի ժամ սուրբ պատարագիս ընդունելի աղօթիւք: Շնորհաւք„ ևն: ‖46 D "Ուրար արկ.„

Օգնեա տէր պարանոցի իմոյ զարդարութիւն, եւ սրբեա զսիրտ իմ յամենայն աղտեղութենէ մեղաց։ Շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ — Նափորտին, որ է շուրջառն. Տէր ողորմութեամբ քով զգեցո ինձ զգեստ պայծառ, եւ պարսպեա ընդդէմ ներգործութեան չարին. զի արժանի եղէց փառաւորել զքո փառաւորեալ անունդ։ Շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ — Յետ զգեստաւորելոյ սրբազան զգեստուքն ասէ. Ցնծայցէ անձն իմ ի տէր, զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան եւ պատմուճան ուրախութեան։ Իբրեւ փեսայի եդ ինձ պսակ, եւ որպէս զհարսն զարդու զարդարեաց զիս։ Շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ դպիրքն երգեն։ Խորհուրդ խորին անհաս անսկիզբն, որ զարդարեցեր զվերին պետութիւնդ, ի յառագաստ անմատոյց լուսոյն, գերապանծ փառաւք զդասս հրեղինաց։ — Անճառահրաշ զաւրութեամբ ստեղծեր զԱդամ պատկեր տիրական. եւ նազելի փառաւք զգեստաւորեցեր ի դրախտն Ադենի տեղի բերկրանաց։ — Չարչարանաւք քո սուրբ Միածնիդ նորոգեցան արարածք ամենայն, եւ վերստին մարդն անմահացաւ, զարդարեալ ի զգեստ անկողոպտելի։ — Անձրեւածին բաժակ հրահոսան, որ հեղար յառաքեալսն ի սուրբ վերնատունն. հեղ եւ ի մեզ Հոգիդ սուրբ Աստուած՝ ընդ պատմուճանիդ զքոյ զիմաստութիւնդ։ — Տան քում վայելէ սրբութիւն, որ զգեցար զվայելչութիւն, սրբութիւն փառաց ընդ մէջ քո ածեալ. պա-

FGK «Ուրարին է.» EN$^2$ «Ուրարին տայ.» (N$^2$ «տաէ.») J «Ուրարի.» PQ «Փոր Ուրարին։» ‖47 E «զարդարութիւնն։» — AFHJ «զսիրտս իմ.» EN «սրբեա զմիտս իմ» (փխ. «զսիրտ»։) ‖49 ADEGHKMN «...որ է շուրջառ.» (նոյնպէս՝ OPQS.) բայց H «...որ է շուրջառին,» GK «Նափորտին է, որ» են։ Իսկ B լոկ «Շուրջառին.» J «Շուրջառի.» F «Շուրջառին է.» N$^2$ «շուրջառին ասէ։» — «Ողորմութեամբ քո» ունին ABEFGJKMNN$^2$։ ‖50 N$^2$ «ներգործութեանց։» ‖52 Այս խորագիրը («Յետ զգեստաւորելոյ» են) չունին RV$^2$ եւ ձեռագիրքն ACGHJKMNN$^2$, որոնք «Ցնծասցէ» են տուներ կը կցեն նախընթացին։ Այլազգ ունին BEF «Դարձեալ ասէ. Ցնծասցէ» են. D «Դարձեալ նափորտին.» I «Դարձեալ շուրջառին։» ‖54 B չունի «Իբրեւ փեսայի... զիս» տուները։ — FJ որպէս հարսն.» N$^2$ «որպէս հարսին։» ‖55 PQ ասոնց վրայ երկու տուն ալ կ'աւելցընեն. նախ Բագրանէն ետքը՝ «Վակասին, Զգեցո Տէր պարանոցի իմոյ զարդարութիւն» են (ուստի Բագրանի աղօթքը կրկնուած.) եւ ամէնէն վերջը՝ «Թաշկինակին. Սրբեա Տէր զձեռս իմ յամենայն աղտեղութենէ մեղաց. շնորհաւք» են։ ‖56 «Խորհուրդ խորին» տաղը բոլոր R$^2$V$^2$stv եւ ձեռագրաց՝ I$^2$Jabj։ — Խորագիրն՝ a «Խաչափառ վարդապետի ասացեալ է վասն զգեստի.» J՝ «Խաչափառ վրդ.է ասացեալ զգեստաւորել քահանայի.» I$^2$՝ «Շարական զգեստաւորութեան.» b՝ «Շարական ինկարկութեան, յորժամ զգենու քհն.» v՝ «Շրկն. հանդերձի յորժամ զգենու։» ‖57 J եւ a «վերին» (փխ. «զվերին։») — I$^2$ եւ abj «զվերին պետութիւն.» R$^2$ «...պետութիւնն.» V$^2$t եւ sv «...պետութիւնդ։» — R$^2$V$^2$ «ի յառագաստն։» — Միայն b՝ «...յանմատոյց լուսոյն ...դասս հրեղինաց։» ‖58 Միայն a՝ «Անճառահրաշ զաւրութիւն ստեղծեր» են։ ‖60 Նոյն a՝ «ի դրախտն Ադինա.» b՝ «...յԱդենի։» — «Միածնիդ» նաեւ R$^2$V$^2$st եւ j, իսկ abv «Միածնին։» ‖62 Rv եւ b «որ հեղեր յառաքեալսն.» a՝ «որ հեղար» են։ ‖63 Հոս stv եւ j՝ «ի սուրբ վերնատունն»։ ‖64 Միայն a՝ «ընդ պատմուճանիդ.» bvR$^2$ «ընդ պատմուճանի։» — «Զիմաստութիւնդ» միայն R$^2$V$^2$stv կամ տպագիրք, իսկ abj եւ I$^2$J

*տես զմեզս մեր ճշմարտութեամբ: — Որ զարարչագործ բազուկս քո տարածեցեր ընդդէմ աստեղաց, հաստատեա զբազուկս մեր կարողութեամբ, համբարձմամբ ձեռաց առ քեզ միջնորդիլ: — Խոյրմամբ թագ ի գլուխ, պատեսցես զմիտս եւ զզայարանս, խաչանիշ ուրարմամբ ըստ Ահարոնի, ծաղկեալ ոսկեթել ի զարդ խորանիս: — Բամից բոլորից տիրապէս աստուածպետական, նախորդապատ սիրով զմեզ զգեստաւորեսցես, քում սուրբ խորհրդոյդ լինել սպասաւոր: — [Էակից Բանդ Աստուած կամաւորութեամբ եկիր ի յանապատն եւ մանանայիւ կերակրեցեր զազգն Իսրայէլի, ընկալ զհացս զայս մեզ ի քաւութիւն:]*

*Թագաւոր երկնաւոր, զեկեղեցի քո անշարժ պահեա, եւ զերկրպագուս անուանդ քում պահեա ի խաղաղութեան:*

## Բ· ՍԿԻԶԲՆ ՊԱՇՏԱՄԱՆ

Ը. — *Եւ յետ զգենլոյ սրբութեան զգեստուցն եկեսցեն առաջի սրբոյ սեղանոյն: Եւ բանանայն լուացէ զձեռս ասելով Սաղ.* ԻԵ. *Լուացից սրբու-*

„զխնամատուութիւն:„ ‖65 Հոս b „...ածեալ, պատեալ զմեզս մեր„ եւն (= s.) իսկ a' „պատեա զմեզս մեր ճշմարտութեամբ:„ ‖68 Միայն b „...ձեռացս:„ — I' „առ քեզ միջնորդել„ (= V²): ‖70 Հոս j (= v) „ծաղկեալ յոսկեթել ի զարդ„ եւն: „Խորանիս„ կ'ըսեն abI²J եւ R²V². պարզ „խորանի„' j եւ stv: ‖71 J եւ a 'նախորդապան„ (փխ. նախորդապատ:„) — I² „քում սուրբ խորհրդոյն:„ ‖72—74 Այս փակագծեալ տուն („Էակից Բանդ„ եւն) ունին միայն J եւ a. միւս ձեռագիրք եւ ամէն ՏՊ. չունին: ‖76 I²J եւ a „անուանդ ․․․„ միւսները տպագիրներուն հետ „․․․„: — Տողես վերջը a կը կցէ Տաղն Առաքելոյ, որ միւսներուն անծանօթ է. (տես վերն' էջ 592:)

Ա. Ասկէ մինչեւ Հտծ. գ. (ուստի տող 78—138) չափազանց պէսպիսութեամբ են ձեռագիրները. ոմանք մեծ մասը չունին, ի մասնաւորի այն մասերն' զոր փակագծի մէջ դրինք (տող 82—90 եւ 107—35 կամ ամբողջ Բ. Հտծ.) ուրիշները տարբեր կարգաւ եւ դասաւորութեամբ եւն: Բովանդակ Ա—Բ հատուածներու տեղ այսպէս ունի A (= EMN, նաեւ GK սկիզբն)' „Եւ յետ զգենլոյ (M զգենլեայ, K զգենլոյն) սրբութեան զգեստուցն' գան առաջի սրբոյ սեղանոյն: Եւ խոնարհեալ պատարագիչ քհն. (K ասէ) առաջի այլոց քահանայիցն աղօթեր կայելոցն (GK ասելով զայս.) Խոստովանիմ առաջի, եւն: (Ողորմեսցի, եւն: Ազատեսցէ, եւն:) Եւ լուացեն զձեռս (EMN զձեռս.) Սղմ. Լուացից սուրբ.: Փխ. Դատ արա: Քարոզ. Սուրբ զԱստուածածինն: Աղօթք (M չունի բառս.) Ընկալ Տէր: Իսկ եթէ եպիսկոպոս լինի„ եւն. (տես Հտծ. գ:) — C աւելի կարճ' „Եւ գան առաջի (յետոյ գրուած' „եւ լուացէ զձեռս. Սղմ. Լուացից զձեռս իմ.) եւ խոնարհեալ առաջի այլ քահանայիցն եւ ասէ. Խոստովանիմ եւն: Պատասխանեն. Ողորմեսցի, եւն: Քհն. ասէ. Ազատեսցէ, եւն: Իսկ եթէ եպ. լինի, եւն. (Հտծ. գ:) — Նոյնպէս B. իսկ D մեկ երկու բառ աւելի ունի, F շատ աւելի. տես ստորեւ վերը: Նոյն խմբէն N² այսպէս' (Զգեստաւորմանէ անմիջապէս ետքն, ինչպէս յայտնի է.) „Խոնարհի առաջ երէցն, եւ քհ. ասէ զխոստովանութիւն. Խոստովանիմ, եւն: Խոնարհի աւագերէցն եւ ասէ. Ողորմեսցի: եւն: Ժամարարն. Ազատեսցէ, եւն: Եւ ապա ասէ Սղմ. Դատ արա ինձ Տէր զի: Եւ լուանայ զձեռն. եւ սրկն. քարոզէ. Սուրբ զԱստուածածինն եւ: Քհ. Ընկալ: Դարձեալ ասէ Սղմն. Մտից առաջի: Քհ. Դատ արա ինձ Աստուած եւ: Երկրպագեալ երիցս մտանէ ի խորանն: Ապա յարուցեալ գա առ որ մատուցանէ նախատարկաւագ, զնէ զնշխարն որ կ հայ ի մաղզմայն եւ ասէ քհն. զպատ. Օրհնեալ Տէրն„ եւն. (ուստի Հտծ. Ե, չմոռնալով նաեւ Գ. Գ

[*Քհն. Եւ վասն սրբուհւոյ Աստուածածնին տէր ընկալ զաղաչանս մեր, եւ կեցո զմեզ: — Սրկ. Սուրբ զաստուածածինն եւ զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր ի յերկինս, զի կամեցեալ ողորմեսցի, եւ գթացեալ կեցուսցէ զարարածս իւր: Ամենակալ տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա: — Քհն. Ընկալ տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին անարատ ծնողի միածնի Որդւոյ քոյ, եւ աղաչանաւք ամենայն սրբոց քոց. եւ որոց այսաւր է յիշատակ, լուր մեզ տէր եւ ողորմեա, ներեա, քաւեա, եւ թող զմեղս մեր, արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ եւ ընդ սուրբ Հոգւոյդ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*]

### ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆ

*Ու ապա խոնարհեալ պատարագիչ քահանայն առաջի այլոց քահանայիցն առընթեր կացելոցն ասէ.* **Խոստովանիմ առաջի Աստուծոյ, եւ սրբուհւոյ աստուածածնին, եւ առաջի ամենայն սրբոց, եւ առաջի ձեր հայրք**

որ տառը տեղ «Կց.» (կցորդ) կը գրեն: — «Լուսցէց» (փխ. «լուսոյսյց») ունին OPQRSUV²: ‖[80] OPQS «Սրգն. ֆոխ. Դասս» ենն: ‖[81] Խորագրիս «տուն առ տուն զփոխն ի լման» ունին միայն UTVV² միւսները (OPQRS) չունին խորագիրս, բայց իրենք ալ սաղմոսին սկիզբը յիշելով կը շարունակեն: W ամբողջ սաղմոսը գրած (= j, եւ նաեւ b, որ տանց սկիզբները կը դնէ:) — X թիւ պատարագի սկիզբն այսպէս ունի՝ «Յետ զգենլոյ սրբութեան զգեստուցն, առեալ զսկիհն՝ երկիր պագցէ խաչելութեան կամ պատկերի, եւ առեալ զօրհնեալ ջուր՝ գնասցէ ի խորանն՝ յորում ունի պատարագել: Ի հասանել առաջի խորանին՝ երկիրպագեալ կամ ծունր կրկնեալ՝ ելցէ ի խորանն, եւ յարդարեալ զսկիհն՝ համբուրէ զսեղանն, եւ իջեալ ընդ ատեանն՝ դարձեալ երկիր պագցէ կամ ծունր կրկնեսցէ: Ապա ի ձայն տեառնագրեալ զինքն եւ տարածեալ զձեռս, ասասցէ. Յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ: Եւ վասն սրբուհւոյ» ենն: ‖[82] F «Եւ վասն սրբուհւոյ ամենօրհնեալ Աստուածածնին բարեխօսութեամբն Տէր» ենն: — CB ենն այս ամէնն՝ ինչպէս վերը կը տեսնուի, չունին: ‖[83] X հոս եւ այլուր միշտ «Սարկաւագն» (փխ. «Սրգն.»:) ‖[84–90] F «Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին եւ աղաչանօք ամենայն սրբոց քոց վկայիցն, լուր… փառաւորել զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ: Խոստովանիմ» ենն: — R եւ V² չունի «Եւ որոց այսօր է յիշատակ» խօսքերը, իսկ X հոս «եւ աւուրս շնորհիւ, նաեւ եւ որոց այսօր է յիշատակ» ենն: — V² «արժանաւորեա գոհանալով փառաւորել» ենն: ‖[92] OPQS չունին խորագիրս, այլ խոստովանութիւնը կը կցեն նախընթացին X՝ «Ձեռնամած խոնարհեալ առ խորանն. Խոստովանիմ» ենն: Ձեռագիրք ընդհանրապէս նոյն, (HIMN չունին «ապա», MN «ասէ»), տես մի առ մի վերը: ‖[93] A թերի է միայն «Խոստովանիմ առա» ունենալով ի թղ. 60բ, ուր թուղթ մ'ինկած է. թղ. 61բ կը սկսի՝ «…[գոր]ծելոյ զկարիս: Աղօթեսցէ եւ զառաջիկայ կեանս ձեր» ենն: ‖[94] «Եւ առաջի ամենայն սրբոց» բառերն ունին շատ ձեռագիրք (CEGIKMN), բայց ոչ ամէնն: B տառը տեղ՝ «եւ սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի, յիշեա եւ զայլ սուրբսն զոր եւ կամիս, եւ առաջի ձեր հայրք» ենն: D ամբողջը համառօտ՝ «Խոստովանիմ առաջի Աստուծոյ եւ սրբոյ Աստուածածնին եւ սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի, յիշէ զամենայն անգամ: Պատասխանեն քհք. Ողորմեսցի» ենն: F շատ տարբեր՝ «Խոստովանիմ առաջի Աստուծոյ եւ սրբուհւոյ ամենաւրհնեալ Աս-

*եւ եղբարք՝ զամենայն մեղս զոր գործեալ եմ։ Բազում մեղայ խորհրդով, բանիւ եւ գործով, եւ ամենայն մեղաւք զոր գործեն մարդիկ, մեղայ, մեղայ։ Աղաչեմ զձեզ՝ խնդրեցէք վասն իմ յԱստուծոյ զթողութիւն։ — Պատասխանեն որք մերձն են. Ողորմեսցի քեզ Աստուած հզաւրն, եւ թողութիւն շնորհեսցէ ամենայն յանցանաց քոց, անցելոյն եւ այժմուս, եւ յառաջիկայէն փրկեսցէ զքեզ, եւ հաստատեսցէ յամենայն գործս բարիս, եւ հանգուսցէ զքեզ ի հանդերձեալ կեանս։ Ամէն։ — Պատասխանեսցէ եւ ինքն. Ազատեսցէ եւ զձեզ մարդասէրն Աստուած, եւ թողցէ զամենայն յանցանս ձեր։ Տացէ ժամանակ ապաշխարելոյ եւ գործելոյ զբարիս։ Առաջնորդեսցէ եւ զառաջիկայ կեանս ձեր շնորհաւք սուրբ Հոգւոյն, հզաւրն եւ ողորմածն, եւ նմա փառք յաւիտեանս. Ամէն։*

---

աուածածնին եւ Յովհաննու Կարապետին, սրբոյն Ստեփաննոսի նախավկային եւ սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչին եւ սրբոց առաքելոյն Պետրոսի եւ Պաւղոսի եւ ամենայն սրբոց եւ առաջի ձեր հարք„ եւն։ JN[2] ալ (= F) “եւ Յովհաննու Կարապետին, սրբոյն Ստեփաննոսի նախավկային եւ (J հաւրն մերոյ) սրբոյն Գրիգորի (J մերոյ) Լուսաւորչին եւ սրբոց (J գլխաւոր) առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի եւ առաջի ձեր„ եւն։ ‖95-96 GHIKMN “բազում մեղայ... բանիւ, գործով„ եւն։ FJN[2] “բազում մեղայ Աստուծոյ խորհրդով, բանիւ եւ գործով, կամա եւ ակամա, գիտութեամբ եւ անգիտութեամբ եւ ամենայն մեղաւք (JN[2] եւ զամենայն մեղս) զոր„ եւն։ — B չունի “եւ ամենայն մեղաւք„, այլ՝ “...գործով, զամենայն մեղս, զոր գործեն„ եւն (= JN[2])։ — N “...զոր գործեալ են„ (փխ. “զոր գործեն„)։ Այս ամէնուն մէջ ի մասնաւորի C = այլ.։ ‖96 “Մարդիկ„՝ BCIM եւն. “մարդիկ+„ FJN[2] եւ GHN (= R.) “մարդիք„՝ E. եւ UT. — BCHIN “մեղայ, մեղայ, մեղայ„ երեք անգամ (= F.) իսկ JN[2] “...մարդիկք, ես եւ մեղուցեալ եմ, մեղա մեղա։„ ‖97 J չունի “յԱստուծոյ։„ — CEGHIMN “...խնդրեցէք վասն իմ յԱստուծոյ.„ (չունին “թողութիւն„, զոր ունին միւսները՝ KN[2] եւն.) իսկ F “...յԱստուծոյ զթողութիւն մեղաց.„ JN[2] “խնդրեցէք վասն իմ զթողութիւն յանցանաց։„ ‖97–98 OPQS “Պատասխանեսցեն որք մերձն են։„ B “պատասխանեն քահանայքն որ մերձն են։„ D լոկ “Պատասխանեն քհնք.„ FGHI “Պատասխանեն որ մերձ են,„ (BFGHI կցեն “եւ ասեն.„ = R)։ CN լոկ “պատասխանեն„ (N լուս. “ասաւ երէցն.„) M “Պատասխանէ ինքն։„ J առոր տեղ՝ “արձակէ,„ N[2] “խնդրեհի աւագ երէցն եւ ասէ։„ Ըստ այլ. է E եւ TUV եւն, նաեւ V[2], որ “մերձ են„ կ'ըսէ։ ‖98 DFN[2] “Աստուած հզաւրն եւ ողորմածն„ եւն։ — E “եւ թողութիւնն„ եւն։ ‖99 F “յանցելոյն եւ այժմուս„ եւն. K “անցելոցն եւ„ եւն։ — D “...այժմոյս„։ — OQSX “եւ յառաջակայէն„ եւն։ ‖100 OPQS եւ BEGIKMN “փրկեսցէ եւ հաստատեսցէ„ (չունին “զքեզ„)։ Բուն այսպէս են BDFN[2] “...եւ այժմուս, եւ որ գալոցն է (փխ. “յառաջիկայէն.) փրկեսցէ եւ հաստատեսցէ յամենայն բարիս„ (FN[2] “յամենայն գործս բարիս„) եւն. J “...այժմւոյս եւ որ գալոցն է յառաջիկայէ փրկեսցէ եւ հաստատեսցէ զգործս բարիս„ եւն։ ‖101 OPQS եւ BDFJKMNN[2] “ի հանդերձեալ կեանսն։„ — BF չունին “Ամէն։„ X ·քհն· յարեսցէ՝ Ամէն„ եւն։ — M չունի խորագիրն “Պատասխանեսցէ„ եւն. EFIN “Պատասխանէ եւ ինքն.„ (F կցէ “եւ ասէ ի վերայ նոցա։„) C լոկ “քհն. ասէ.„ BDGK “իշխն (GK քհն.) ասէ ի վերայ նոցա.„ H “Պատարագիչն ասէ։„ N[2] լոկ “ժամարարն.„ J՝ “նոյն։„ ‖102 X “Ազատեսցէ †„ եւն։ ‖103 E “գործելոյ զբարիս.„ H “գործելոյ բարիս։„ Այս բառով կը սկսի գործեալ A։ ‖104 OPQS “զառաջակայ„։

## Մ Ո Ւ Տ Ք

Բ. — [Դպ. Յիշեսջի՛ր զմեզ առաջի անմահ գառին Աստուծոյ, — Քհն. Յիշեալ լիջի՛ք առաջի անմահ գառին Աստուծոյ։ — Դպ. Սաղմոս. ՂԹ. Փոխ. Աղաղակեցէ՛ք առ տէր ամենայն երկիր, եւ այլն։ — Սրկ. քարոզէ. Սուրբ եկեղեցւոյս աղաչեսցուք զտէր, զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց, եւ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ. ամենակալ տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա։ — Քհն. Ի մէջ տաճարիս եւ առաջի աստուածընկալ եւ պայծառացեալ սուրբ նշանացս, եւ սուրբ տեղւոյս խոնարհեալ երկիւղիւ երկիրպագանեմք, զսուրբ, զհրաշալի եւ զյաղթաւղ զտէրութիւնդ քո փառաւորեմք։ Եւ քեզ մատուցանեմք զաւրհնութիւն եւ զփառս ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյդ սրբոյ. այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։ — Քհն. Սղմ. ԽԲ. Կց. Մտից առաջի սեղանոյ առ Աստուած, որ ուրախ առնէ զմանկութիւն իմ։ — Սրկ. Դատ արա ինձ Աստուած, եւ իրաւ արա ինձ ի դատաստանի իմում։ — Քհ. Յազգէ որ ոչ է սուրբ, ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա զիս։ — Սրկ. Դու Աստուած հզաւրիչ իմ ես, ընդէ՞ր մոռացար զիս, ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։ — Քհ. Առաքեա Տէր զլոյս քո եւ զճշմարտութիւն քո. զի առաջնորդեսցեն ինձ եւ հանցեն զիս ի լեառն սուրբ եւ ի յարկս քո։ — Սրկ. Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած, որ ուրախ առնէ զմանկութիւն իմ։ — Քհ. Խոստովան եղէց քեզ աւրհնութեամբ Աստուած Աստուած իմ։ — Սրկ. Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես

---

Բ. Ձեռագրաց շատն այս հատուածը չունին, այսպէս BC եւ ADEHMN. միւսները մէկ երկու բան, ոմանք այլանձեւ եւ կրկնութեամբ (F որ շատ բան ունի՝ տես վերն.), ի միջի այլոց GIJKN². այս ամէնը տես Ա. Հատուածին սկիզբը, ուստի հոս չենք կրկներ։ Նաեւ տպագիրք կամ չունին (ինչպէս R) Կարգի դպրութեան Թողլով զատանք, կամ սարկաւագի մասերուն սկզբնաւորութիւնները միայն կը դնեն. (այսպէս PQ։) ‖107 $R^2$ "Յիշեսջիր Ե— զմեզ" եւն։ — $V^2$ "...գառինն Աստուծոյ։" ‖108–9 $V^2$ չունի "փոխ" բառը։ — $R^2$ "Դպիրքն ասիցեն Սղմ. 99 Հրեշտակեցէ, որ ասի՝ Աղաղակեցէք առ." b լիակատար գրած է սաղմոսը։ — $R^2$ "Քարոզ" (փխ. "Սրգն. քարոզէ։") $V^2$ միայն "Սրկ." ‖110ff X ալ չունի "Սուրբ եկեղեցւոյս" եւն եւ մաղթանքն "Ի մէջ տաճարիս" եւն։ Վերջինս չունի նաեւ j, իսկ առաջինը յետոյ (տես տող 130)։ ‖112 F "Առ փրկող ...ք" (փխ. "ի մէջ") ...", եւն. (GK եւն տես վերն՝ Հտծ. Ա։) ‖113 F "...եւ սուրբ խորանացս" (փխ. "...տեղւոյս")։ ‖114 F եւ OPQS "...սուրբ եւ զհրաշալի" եւն. (փխ. "զսուրբ, զհրաշալի" եւն։) — $R^2$ $V^2$ "զյարութիւնդ" (փխ. "զտէրութիւնդ" = F եւն)։ ‖115–16 F "Եւ քեզ ընդ երկնային զաւրացն մատուցանեմք զաւրհնութիւն եւ զփառս Հաւր եւ Որդւոյ.։" — $V^2$ "...եւ ընդ սուրբ Հոգւոյդ" եւն։ Միանգամ ընդ միշտ բսենք որ R ($R^2$) U միշտ "Որդի" կը գրեն բառ բաւականաւ։ ‖117 PQ "Քհն. ասասցէ Սաղմոս ԽԲ. Կցորդ։ Եւ երթէ ի խորանն. Մտից" եւն. OS = ՏՍ։ ‖118ff OPQS "Սրգն. ժող. Դատ" եւն։ — $R^2$TUV$V^2$ "Դատ արա ինձ Աստուած, Ե— այլն. փոխ առ փոխ գծովն է լման." OPQS չունին այս խրատագիրն, բայց սաղմոսը նոյնպէս այսպէս համառօտ կը յիշեն։ Լիակատար կը դնեն WX եւ hj։

զնս. յուսա առ Աստուած. խոստովանեսա նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է: — Քհ. փառք Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ: — Սրկ. Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն: — Սրկ. բարոզէ. Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք: Աւրհնեսցուք զՀայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ արժանի արար զմեզ կալ ի տեղւոջ փառաւորութեան, և երգել զերգս հոգևորս. ամենակալ տէր Աստուած մեր կեցո և ողորմեա: — Քհ. Ի յարկի սրբութեան, և ի տեղւոջ փառաւորութեան, հրեշտակաց բնակարանիս, և մարդկան քաւարանիս. առաջի աստուածընկալ և պայծառացեալ սուրբ նշանացս և սուրբ սեղանոյս խոնարհեալ երկիր զնս. երկիր պագանեմք, զսուրբ զհրաշալի և զյաղթող զթագաւորութիւնդ քո փառաւորեմք: Եւ քեզ մատուցանեմք զաւրհնութիւն և զփառս ընդ Հաւր և ընդ Հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից. Ամէն:]

‖128–29 X "Քհն. տեառնագրեսցէ զինքն և կացցէ ձեռնամած. Փառք Հօր և Որդւոյ †...: Սղ. Այժմ... Ամէն. և ևս խղ." ունի: ‖129 Փխ. "Սրկ. քարոզէ: Եւ ևս" ունի. I լոկ "Քարոզ. Աւրհնեսցուք" ունի: F "Եւ քարոզէ սրկն. Աւրհնեսցուք." միւսները տես Հաւծ. Ա սկիզբը: V² "Սրկ. Օրհնեսցուք" ունի: "Եւ ևս խղ." չունին նաև R²V²: ‖130–33 I² (Թղ. 18բ) "Օրհնեսցուք զՏէր Աստուած զՀայր" (= G.) ունի. F և b "Աւրհնեսցուք զամենակալն Աստուած զՀայր" (= K) ունի: — OPQS "ի տեղւոջ փառաւորութեան." F "ի տեղոջ" ունի: — Այս քարոզութիւնը չունի j, այլ առոր տեղ հաս և յաջորդները՝ "Սրգ. Սուրբ խորանաւս աղաչեսցուք զՏէր զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց, և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ, ամէն. (= տող 110—12:) Քհ. Ի յարկի քում սրբութեան, և այլ: Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո: Շրկն. խնկարկութեան ի սուրբ յեկեղեցւոջ. Ընտրեալդ... Ցայս յարկ" ունի. (տես Հաւծ. Ե ունի:) F ալ այս "Օրհնեսցուք" ունի քարոզութենէն ետքը j ձեռագրի կը մերձենայ կրկնաբանելով այսպէս. "Եւ քհն. ասէ զաղօթ. ի մէջ տաճարիս և առաջի աստուածրն..: Եւ քհն. ասէ. Մտից առաջի սեղանոյ: Փխ. Դատ արա ինձ Աստուած: Սրկն. քարոզէ. Սուրբ խորանաւս ա..: Եւ քհն. Ի յարկի սրբութեան և ի տեղւոջ փառաւորութեան, հրեշտակաց բնակարանիս և մարդկան քաւարանիս, խո..: Եւ առնի սրկն. զնշխարն" ունի. (տես Հաւծ. Եւ:) ‖133 J "ի յարկի †——մ սրբութեան." (= GHK.) — PQ "և ի տեղւոջ." (OS ունի = առ.) ‖134ff J այլակերպ ամբողջը "ի յարկի քում... հրեշտակաց բնակարան և մարդկան քաւարան, աստուածընկալ և պայծառացեալ սուրբ նշանացս և սուրբ խորանացս խոնարհեալ... սուրբ, զհրաշալի և զյաղթող տէրութիւնդ քո աւրհնեմք և փառաւորեմք. և քեզ մատուցանեմք զաւրհ.: Սղմ. Ինձ մերձենալ առ Աստուած" ունի. (տես Հաւծ. Ա, սկիզբը:) ‖135–36 R² "սուրբ նշանացս:" — OPQS և b "և սուրբ սեղանոյս (փխ. "սեղանոյս") խոնարհեալ... զսուրբ (OS "սուրբ" = J) և զհրաշալի և զյաղթող զթագաւորութիւնդ (b "զթագաւորութիւնդ" = R²TUVV²W, իսկ X "զյաղթող տէրութիւնդ կամ յարութիւնդ եւ այլն") քո փառաւորեմք (b "աւրհնեմք և փառաւորեմք" = J.) և ետք (= b, OQ. չունին "քեզ" PS) ընդ երկնայինն զաւրսն մատուցանեմք զօրհնութիւն" ունի: ՏՔ խումբը չունի "ընդ երկնային զաւրսն" բառերը: ‖138 R²V² "և ընդ սուրբ Հոգւոյդ" (R² "Որդւոյդ") ունի: — X հոս կը կցէ "Սաղմոսարն. Եւ ևս խղղ. զՏէր աղաչեսցուք: Քհն. բացեալ զոհին" ունի (տես Հաւծ. Եւ:)

Գ. Ամբողջ Հատուածս կամ զոյգ աղօթքներս չունին DFN² և J, առջ. գիրներէն՝ X: իսկ B ունէր նախնարար, բայց այժմ միայն խարագիրն ունի՝

Գ. — Իսկ եթէ եպիսկոպոս լինի խորհրդածուն, ասէ զսուրբ կնքեան, եւ ածէ ի վերայ լանջացն եւ զպատուական նշխարսն, եւ եկեսցէ առընթեր ընծայարան սեղանոյն՝ լուացեալ զձեռս, եւ մատուցեալ առաջի սեղանոյն լուռ եւ անմռունչ, ասասցէ զաղօթս առ սուրբ Հոգին անուրանելի գործոյն. [Գրիգորի Նարեկացւոյն։]

*Ամենակալ Աստուած բարերար մարդասէր, Աստուած բոլորից, յաւրինող երեւութից եւ աներեւութից, փրկող եւ հաստատող, խնամող եւ խաղաղարար, Հաւր հզաւր Հոգի։ Հայցեմք բազկատարած մաղթանաւք՝ գոչմամբ հեծութեան՝ յանդիման եղեալ քեզ ահաւորիդ։ Մատչիմք մեծաւ դողութեամբ, սաստիկ երկիւղիւ՝ մատուցանել նախ զբանականս զայս պատարագ քում անզննին տէրութեանդ, իբր աթոռակցի, փառակցի եւ արարչակցի հայրենի անկապուտ պատւոյդ, եւ քննողի ծածկութեան խորոց խորհրդոց ամենակատար կամաց Հաւրդ Էմմանուէլի, զքեզ առաքչի, փրկչի, եւ կենդանատուի եւ արարչի ամենայնի։ Ի ձեռն քո ծանուցաւ մեզ երրեակ անձնաւորութիւնդ միանական աստուածութեանդ, յորոց մի եւ դու ճանաչիս անհաս։ Քեւ եւ ի ձեռն քո առաջինքն նահապետական*

---

*թուղթ ինկած ըլլալով Թղ.* 106*էն յառաջ։* ||139ff C *այսպէս կարճ “Իսկ թէ եպիսկոպոս լինի՝ առնու զսուրբ կնքեան, ածէ ի վերայ լանջացն եւ զնշխարսն, եւ գա առաջի սեղանոյն. Ամենակալ„ եւն։* ABEGHIKMNN² *“Իսկ եթէ եպ. լինի խորհրդածուն, առնու զսուրբ կնքեան* (H *կոնձեռն*), *եւ (լոկ* A *“եւ„) ածէ* (B *ածեալ,* E *“Աստուած„) ի վերայ լանջացն եւ զպատուական* (IH *պատուական) նշխարսն, եւ գայ* (KMN *գան) առընթեր ընծայարան սեղանոյն, լուացեալ զձեռս* (B *զձեռսն,* IH *չունին “լուացեալ զձեռս„)։ Եւ* (GK *երկրպագէ երիցս եւ) մատուցեալ* (ABEIN *կցեն “անկանի„) առաջի* (ABIN *կցեն “սրբոյ„.* E *չունի) սեղանոյն* (AEN *կցեն “ի վերայ երեսաց իւրոց„) լուռ եւ անմռունչ, եւ ասասցէ* (GH *“եւ ասէ„,* K *լոկ “ասէ„) զաղօթս առ սուրբ Հոգին անուրանելի գործոյն։„* B *վերջին այսպէս ունէր՝ “եւ մատուցեալ անկանի առաջի սրբոյ սեղանոյն անմռունչ եւ ասասցէ զաղօթս զայն առ Հոգին անուրէն գործոյն։„ Տպագիրներէն* OPQS *“իսկ եթէ եպ. լինի* (= 22.) *խորհրդածուն, ասէ զսուրբ կնքեան եւ* (PQ *չունի խօսքս,* OS *ունին* = RTUV *եւն.) ածցէ ի վերայ լանջացն եւ* (OS *չունին “եւ„) զպատուական նշխարսն. եւ մատուցեալ առ ընծայարան սեղանոյն եւ ի ծունկս անկեալ յորդահոս արտասուօք լուռ եւ անմռունչ„ եւն։* ||142 *Փակագծեալը ունին միայն* OPQ (= B *“Գրիգորի Նարեկացւոյն„ եւ* GK *“Նարեկացւոյն ասացեալ„)։* ||143 OPQS *“Ամենակալ բարերար„ եւն (չունին “Աստուած„)։* I *“Ամենակալ Աստուած մարդասէր„ (չունի “բարերար.„) իսկ* GK *“Ամենակալ Աստուած անարատ մարդասէր... բոլորից եւ յօրինող„ եւն։* N *կը սկսի՝ “Բարերար մարդասէր Աստուած„ եւն, չունենալով երկու առաջին բառերը։* ||145 A *չունի “Հոգի։„ — “Բազկատարած մաղթանաւք„ պահեցինք ըստ* ACEGHIKMN, *մինչ տպագիրք ունին “բազկատարած մաղթանաց գոչմամբ հեծութեան„ եւն։* ||147 C *“զայս զպատարագ.„* N *“զայս պատարագս։„* ||148 PQ *եւ* VV² *“քում անզննին (այսպէս նաեւ* 22 *եւ Տպ.) զօրութեանդ„ (փխ. “տէրութեանդ„ ըստ* ORSTU *եւ ամէն* 22)։ ||149 S *“անկապուտ պատուոյն։„* ||150 S *“խորհրդոյն„ եւն։ — “Էմմանուէլի„ ըստ* 22. *միայն* CH (*եւ* PQRSU) *“Էմմանուէլի.„* N *“Իմմանուէլի։„ —* OS *“զքեզ առաքողի„ (փխ. “առաքչի։„)* ||151 *“Փրկչի„ ունին ամէն* 22 *եւ ՏՊ., միայն* W *դուրս թողուցած է։* ||152 CM *“անձնաւորութիւն„* (= PSVV²), *միւսները* (AE *եւն, եւ այլ ՏՊ) “անձնաւորութիւնք.„ միայն* O *“անձնաւորութեանն„ անճիշդ,* N *“անձնաւորութեանն„։ —* S *“աստուածութեանն„.* N *“միանական աստուածութեանդ։„* ||154 K *“ճանաչեղք„։ —* A *“անուանեալք„ (փխ. “անուանակոչեալք„)։ —*

*տոհմին շառաւիղք, տեսանողք անուանակոչեալք, զանցեալսն եւ զգալոցն, զեղեալսն եւ զոչ գոյացեալսն անստուերաբար բարբառով բանի վերապատմեցին: Հոգի Աստուծոյ քարոզեալ զքեզ Մովսեսի՝ որ ի գնալն քո ի վերայ ջուրցն անպարագիր զաւրութիւն, աՀեղ շրջարկութեամբ տածողականաւ, թեւապարփակ պաշտպանողաւրէն զթափրեալ ի ծնունդս նորոգս, զաւազանին խորհուրդ ծածուցեր: Յոր կերպարան աւրինակութեան նախ քան զկառուցանել զլոյծդ մածուած վերջնում վարագուրիդ յաւրինեցեր կարող տիրապէս զբովանդակ բնութիւնս ամենից բնաւից բոլորից գոյից ամենայն էից յանէից: Քեւ սահղծանին ի նորոգութիւն յարութեան ամենայն եղեալքս առ ի քէն, յայնմ ժամանակի՝ որ է աւր վերջին այսմ կենցաղի, եւ աւր առաջին երկրին կենդանեաց: Քեզ հնազանդեցաւ միութեամբ կամացն որպէս Հայրն իւրում ազգակիցն քո՝ էակիցն Հաւր անդրանիկն Որդի մերովս կերպիւ. զքեզ աւետարանեաց ճշմարիտ Աստուած հաւասար եւ համագոյ Հաւրն իւր հզաւրի: Ձառ ի քեզ հայհոյութիւնն անքաւելի քարոզեաց, եւ իբր զաստուածամարտից զքո հեստեւլոցն չարաբանական բերանս կարկեաց, եւ զիւրն շնորհեաց արդարն եւ անարատն՝ գտիչն ամենայնի. որ վասն մեղաց մերոց մատնեցաւ, եւ յարեաւ վասն զմեզ արդարացուցանելոյ: Նմա փառք ի ձեռն քո, եւ քեզ բարեբանութիւն ընդ Հաւր ամենակալի յաւիտեանս յաւիտենից, ամէն:*

Դորշիւ կրկնեալ է նոյն կերպ բանն՝ մինչ վերահայեցողութեան լուսոյն հրաշալեօ ուղղեալ յայտնեալ, առերաբանել վերստին զկրկին խորհրդութեան:

---

M "զյանցեալսն„ ունի: ‖155 R եւ անկէ UVV² չունին "զեղեալսն եւ զոչ գոյացեալսն„ բառերն, զորոնք ունին 22 եւ OPQTW ունին. իսկ S "(զանցեալսն եւ զգալոցսն), զեղեալսն անստուերաբար բանի– (այլք "բանի„) վերապատմեցին„ ունի: ‖156 GHKM եւ V "բան է վերայ պատմեցին„ (փխ. "...բանի վերապատմեցին:„) — "Որի Աստուծոյ„՝ R եւ անկէ UTW. — OPSV (= AN) "Մովսէսի.„ Q "Մովսիսի:„ ‖157 AN եւ PVV² "ջրոցն.„ (այլք "ջուրցն„:) ‖158 C "զթափրեալ ծնունդս„ ունի. (չիք "ի„:) ‖160 GHIKMN "զկառուցանել„: — "Զլոյծդ„ ըստ ACE ունի, միայն RU "զլոյծ„. S "զլոյծն:„ — CGHN "վերջնումն„ ունի. S "վերջնոյ վարագուրին.„ (A "վերջնում վարագուրիդ„ ոսկով գրուած:) ‖162 GK "ամենից„ (փխ. "ամենայն էից„:) — M "հաստեղծանին„ (փխ. "Քեւ:„) — E "ի նորոգութիւնն.„ I "ի նորոգութիւնս:„ ‖163 S "այսր կենցաղի.„ (ամէնքը "այսմ„ ունին.) — RM "կենցաղոյս:„ ‖164 C "Քեզ հնազանդեցաւ միութեան կամացն„ ունի: ‖165 I չունի "էակիցն:„ ‖166 PQ խօսքն այսպէս կը բաժնեն "...անդրանիկն Որդի. մերովս կերպիւ զքեզ աւետարանեաց„ ունին. (բոլոր 22 եւ ՏՊ = ապ.:) M "մերով կերպիւ.„ K "մերովս է կերպիւ:„ — E "ճշմարիտն Աստուած.„ HN "ճշմարիտդ„ ունին: ‖167 A "համագոյ Հզաւրի„ (չունի "Հօր իւր„.) իսկ CGHKMN "Հաւրն (CG Հաւր) իւրոյ հզաւրի.„ I "Հօրն իւրոյ„ հզօրի:„ — PQV (= C) "Ի– զառ ի քեզ„ ունին: ‖168 CI չունին՝ "եւ„ նախ քան "իբր„ ունի: PQRVV² "զաստուածամարտիցն:„ — N "զքեզ (փխ. "զքո„) հետեւողն„ ունի: — CEGHK (= S) "չարաբանական բերանն.„ (C նաեւ "զչարաբանական„ ունի:) ‖171 H "քեզ բարեբանութիւն„ (փխ. "բարեբանութիւն„:) — IMN "ընդ Հաւրդ„ ունի. — AC եւ IMN "...յաւիտենից յաւիտեանս. ամէն:„ ‖173 CEGHIKM "կրկնեցէց„ (= ORSU), միւսները "կրկնեալէ„: — "Վերահայեցողութեան լուսոյն„ գրինք ըստ ACEGHIKMN եւ տպագիրներէն ORSU (R "...լոյսն„). միւսներէն TWV² "վերահայեցողութեան լուսոյն.„ PQ "վասահութիւնն վերահայեցողութեան լուսոյ:„ — HN "հրաշափառապէս„ (փխ. "հրաշալեօ:„)

Աղաչեմք եւ աղերսեմք արտասուալից հառաչմամբ յամենայն անձնէ՝ զփառաւորեալ արարչութիւնդ՝ անեղծ եւ անստեղծ անժամանակ Հոգւոյդ գթածի. որ բարեխաւսդ ես վասն մեր յանմռունչ հեծութիւնս առ ողորմածդ Հայր. որ զուրբսն պահես, եւ զմեղուցեալսն մաքրես եւ տաճարս կազմես կենդանի եւ կեցուցիչ կամաց բարձրելոյդ Հաւր: Արդ ազատեա զմեզ յամենայն անմաքուր գործոց՝ որ ոչ է հաճոյ քումդ բնակութեան. եւ մի շիջցին առ ի մէնջ լուսոյդ շնորհաց փայլմունք ի տեսականացս աչաց իմաստից. վասն զի զքեզ ուսաք միանալ ի մեզ ի ձեռն աղաւթից, եւ ընտիր վարուց խնկելոց: Եւ քանզի մինդ յԵրրորդութենէդ պատարագի, եւ միւսդ ընդունի՝ հաճեալ ընդ մեզ հաշտարար արեամբ անդրանկի իւրոյ, իսկ դու ընկալցիս զմեր պաղատանս, եւ յարդարեսցես զմեզ աւթեւանս պատուականս ամենայն պատրաստութեամբ ի վայելումն ճաշակման երկնաւոր գառինդ՝ առանց պատժոց դատապարտութեան ընդունել զայս անմահացուցիչ մանանայս կենաց նորոյ փրկութեան: Եւ հալեսցի ի հրոյս յայսմանէ գայթակղութիւնս մեր, որպէս մարգարէին կենդանախարոյկ կայծակամբն ի ձեռն ունելեացն մատուցման. զի յայսմ ամենայնի քոյդ քարոզեսցի գթութիւն, որպէս Որդւոյդ Աստուծոյ Հաւրդ քաղցրութիւն. որ զանառակ որդին մերձեցոյց ի հայրենի ժառանգութիւնն, եւ զպոռնիկսն յառաջեցոյց յերկնային արքայութիւնն արդարոցն երանութեան: Այո [Տէր] այո, եւ ես մի եմ ի նոցանէ. եւ զիս ընկալ ընդ նոսին

‖174 "Աղդեալ յայտնեսցի" ունի բոլոր 22 (տես "վերահայեցողութիւն") եւ RSU. միւսները՝ "...յայտնեսցի աղդեալ" են. (V² "...յայտնեսցի, աղդեալ ուետարանել" են կը տրուհէ:) — P "ուետարանեալ:" — PQ "...կրկին ղխաղաղութիւն." բոլոր 22 "...կրկին խաղաղութիւն" (միայն M "խաղաղութեամբ.") միւս տպագիրք մեր դրածին պէս: ‖175 G "ամենայն անձնէ:" ‖176 AN "զփառաւորեալ արարչութիւնդ" են: — "Եւ անստեղծ" բառերը, զոր ունին ամէն 22 եւ ՏՊ. (նաեւ T), զուրս ինկած են ի W: ‖177 N եւ OS "անմռունչ հեծութիւնս:" — "Ողորմածդ" ըստ բոլոր 22 եւ OPQVV². (իսկ RSUTW "ողորմածն:") ‖178 RUVV² "զսուրբս... զմեղուցեալս". միւս տպագիրք եւ 22 ունին յօդով: C "զսուրբսն պահես, զմեղուցեալսն" են: ‖179 "Բարձրեալդ" ըստ ACG եւ այլ 22. եւ տպագրաց (միայն E չունի բառս.) իսկ RU "բարձրելոյդ", S "բարձրելոյն:" ‖180 R "...որք ոչ են հաճոյ քումդ" են: — Միայն E "քումդ բնակութեան." (ամէն այլ 22. եւ ՏՊ "բնակութեան":) ‖182 ACE եւ բոլոր 22 "ի տեսականաց աչացս իմաստից" (= OS.) միւս տպագիրք "ի տեսականացս աչաց" են: ‖183 H "մինդ յԵրրորդութենէն:" ‖184 C "...արեամբք անդրանկի քո" են: ‖185 A "ընկալցիս զպաղատանս." այլ 22 (= ՏՊ) "ընկալցիս զմեր պաղատանս." (I "զմերս պաղատանս":) ‖187 E "դատապարտութեանն": — PS "ընդունել:" ‖188 C "նորոյս փրկութեան." K "նորս փրկութեան" սխալմամբ: — N "...նորոյ փրկութեանս." RTVV² "նորոյ փրկութեանն:" ‖190 R չունի հարկաւոր "ի ձեռն" բառը: — "Զի յայսմ ամենայնի" դրինք ըստ բոլոր 22. (ACEGHIKMN) եւ ORS, միւս տպագիրք (PQUVV²W) չունին "յայսմ": ‖191 H եւ PQV "Հօր քաղցրութիւն." միւս 22. եւ ՏՊ. "Հօրդ" են. (N "Հօրդ քաղցրութեան" սխալմամբ:) ‖192 "Ժառանգութիւնն" ըստ ACIMN եւ RPQSTVV², միւսները (EG են, OW) "ժառանգութիւն": ‖193 K "ի յերկնային" են: — "Արքայութիւնն" ունին նախադասեալք (տող 192.) եւ ամէն ՏՊ. իսկ EGHK (հա նաեւ N) "արքայութիւն." C "յերկնայինն արքայութիւն:" ‖194 Փակագծեալ "Տէր" ունին բոլոր 22 (տես տող 190) եւ OS. միւս ՏՊ. չունին:

իւր մարդասիրութեան կարաւտեալ մեծի, շնորհաւք քո ապրեալ, զա-րեամբ Քրիստոսի ստացեալս. զի յայսմ ամենայնի՝ յամենայնի ծանիցի մարդասիրութիւն քո ընդ Հաւր փառաւորեալ Համապատուաբար ի մի կամս, և ի մի իշխանութիւն գովութեան։

Ի ձայն. Զի քո է զթութիւն, և կարողութիւն, մարդասիրութիւն, զաւրութիւն, և փառք յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

ՄԵՂԵԴԻՔ

Գս. — Ես ազգ յեսեն շնորհատուրն. ես փայլէին երկնայինն մեծարէ խորհր-դաւոր, կամ փառս։ — Առաւօտ։ Բարբառ աւետեաց ձայնիւ։ Կրկին։ Գա-բրիէլ գոչէր սրբուհւոյն։ Առ քեզ առաքիմ մաքուր։ Կրկին։ Պատրաստել տեղի տէրունեաւն։ — Ծննդեան։ Նոր ծաղիկ այսաւր բղխէ յարմատոյն Յեսսեայ։ Եւ դուստր Դաւթի ծնանի զՈրդին Աստուծոյ։ — Ցեառնընդ-առաջին։ Քրիստոս փառաց թագաւորն այսաւր եկեալ ընծայումն։ Կատա-րելով նա զաւրէնս քառասնաւրեայ գալստեամբ։ — Ծաղկազարդին։ Աստ Եբրայեցւոց մանկունքն զերգ քերոբէիցն առեալ, Հեթանոսական դասուց տաւնակից վեհիցն եղեալ։ — Յարութեան։ Ես ձայն զաւրութեան ասեմ, որ

‖195 S "շնորհօք քո ապրեցեալս, արեամբն Քրիստոսի ստացեալս" են։ O անփոփոխ "...արեամբն Քրիստոսի ստացեալս." — AC "զարեամբ" են. EGHIKMN "զարեամբք Քրիստոսի ստացեալս" (EKN "ստացեալ".) R "արեամբդ" են. U "արեամբ" են։ ‖196 ACEGKMN "զի յայսմ ամենայնի՝ յամենայնում ծանիցի" են, HI "զի յայսմ ամենայնի եւ յամենայնում" են. Նաեւ OSU ունին "յամենայնում" (մինչ ՑՊ. "յամենայնի")։ ‖197 Բոլոր ՁՁ (ACEGHIKMN) "ծանիցի մարդասիրութիւն քո" (= ORSU), մինչ տպագիրք (PQTV$V^2$W) "ծանիցի քո մարդասիրութիւնդ"։ ‖199 "Ի ձայն" խորագիրը չունին ACEIM, ունին GHKN եւ ՑՊ. — Այս երկտողը ("Զի քո է" են) ալ չունին DFJ$N^2$ եւ X։ — M չունի "մարդասիրութիւն" բառը։ ‖200 N չունի "զօրութիւն"։

Դ. Մեղեդիք չունին բոլոր Ձռ. եւ ՑՊ. կամ ձեռագիր եւ տպուած խորհրդատետրերն, նաեւ ձեռագիր Կարգ դպրութեանց՝ բայց միայն $I^2$ (Թղ. 39ա—45բ) եւ m (Թղ. 112բ—137բ որ այստեղ գրուածներէն քիչ բան ունի) այլեւայլ գրիչներէ, ինչպէս մեղեդեաց հաւաքումն r եւ տպագիր Դպրութիւնք եւ Տաղարանք, այսպէս $R^2V^2$ $s^{1-4}$, $t^{1-2}$, v եւ ուրիշներ։ $I^2$ mr եւ տպագիրքն sv շատ ընդարձակ են՝ բազմաթիւ ուրիշ մեղեդիներ ալ ունենալով. v (էջ 13–28) տարբեր կարգաւ ալ, իսկ s (էջ 8—17) աւելի նման է կարգաւ մեր գրածին։ Մենք առինք միայն անոնք որ կային նաեւ ի $R^2V^2t^{1-2}$ են, համեմատելով միւսներուն հետ (բայց ոչ $I^2$mr ամէն այս մեղեդիները միշտ ունին.) Թուած հոյլ մը մեղեդեաց տես sv են. (v նախ "Ընտրեալ" տաղն ունի՝ էջ 12, յետոյ մեղեդիքը։) ‖202 v "...եղանակեն մեղեդի ըստ պատշաճի աւուրն." s "...մեղեդի խորհրդաւոր," ուստի կիրով համեմատ $R^2V^2$t "...մեղեդի խորհրդաւոր կամ տաղ։" ‖204 Թէ s եւ թէ v "պատրաստեալ տեղի" են։ ‖205 "Բղխէ" ըստ $I^2$r եւ t, իսկ $R^2V^2$ "բղխի։" ‖206 Պահեցինք "դուստր" Դաւթի (ըստ $R^2$, որմէ $V^2$t), ուր $I^2$m եւ sv "եւ դուստր Դաւթի ծնանի զՈրդին (m զորդի, $I^2$ Որդի) Աստուծոյ." իմաստն աւելի պայծառ կ'ըլլայ "դուստր" բառով. (r այս տունը չունի։) ‖208 "Գալստեամբն" ունին sv. (ձեռագրաց մէջ չգտայ այս տունը։) ‖209ff Ծաղկազարդի մեղե-դիս չունին $I^2$ եւ r։ — "Մանկունքն" ըստ $R^2V^2$ եւ v. "մանկունք"՝ m եւ st. — Նոյն m՝ "զերգս քերովբէիցն" են, sv "զերգ զքերովբէիցն" են. — m՝ "...տօնակից եղեալ վերնոցն" (փխ. "վեհիցն եղեալ"։) ‖210–12 Այսպէս

գոչէր ի քառաթեւին։ Ի քառաթեւին գոչէր. Կրկնէ։ Զայն առնէր ի սանդարամետան. Կրկնէ։ — Նոր Կիրակէ։ Այսաւր Նոր արեւ հարեալ, ի նորահրաշ արեգականէն, ի նորահրաշ։ Այսաւր Նոր շուշան ծաղկեալ ի Նորատունկ բուրաստանէն։ — Համբարձման։ Այսաւր անդրանիկ Հաւր միածին Որդին, յերկինս ելանայ ադամային կերպիւ։ Նըւագ Ներբողից եղանակեն այսաւր հոյլք հոգեղինաց երկնաւորացն խմբից։ — Հոգւոյ գալստեան։ Նըւագեմք Հոգւոյն նըւագս վայելուչս։ Վայելուչս բանիւ զարարչութիւնն նախ ասեմք։ — Վարդավառին։ Գոհար վարդն վառ առեալ։ Կրկնէ. գոհար։ Ի վեհից վարսից արփենից։ Կրկնէ. ի վեհ։ Ի վեր ի վերայ վարսիցն պղպջէր ծաղիկ ծովային։ Կրկնէ. պղպջէր։ Փոխման։ Այսաւր Գաբրիէլ հրեշտակապետն եկեալ, բերեալ զբրաբիոնն, պսակ յաղթող կուսին։ Այսաւր կոչելով առ բոլորից տէրն զտաճար բարձրելոյն եւ զբնակարան Հոգւոյն։ — Խաչի։ Խաչն ի նախնումն երեւեցաւ ծաղկեալ ի դրախտն աստուածատունկ՝ մխիթարիչ եղեալ Սեթաւ, նախագուշակ հաւրն Ադամայ։ Մեք ի յայն փայտն եմք յուսացեալ, յոր տէր Յիսուս բեւեռեցաւ. եւ խոնարհեալ երկրպագեմք աստուածընկալ սուրբ Նշանիս։ — Հրեշտակապետաց։ Գովեստ բերկրանաց քաղցրաձայնեալ նըրգեմք ձեզ հրեշտակապետք, եւ հրեշտակաց գումարք։ — Առաքելոց։ Արեգակն արդար, որ ի Հաւրէ ծագեալ, զառաքեալսն քո անճառ շնորհաւք լցեալ։ Որով լուսոյ ցուցեալ Հայաստանեայց ազանց, մեծն Թադէոս Բարթուղիմէաւ փայլեալ։ — Մարգարէից։ Աստուածային խորոցն անճառ խորհրդածուք սուրբ մարգարէք. բանիւ պատմողք զապագայիցն յառաջագոյն զեղելութիւնն։ — Հայրապետաց։ Ի հանդէս տաւնի քոյ բախացեալ ցնծամք, հայր եւ վարդապետ սուրբ հայրապետ Պետրոս։

---

$R^2V^2$ եւ st, նոյնպէս $I^2$ եւ r (իսկ m չունի, ինչպէս յաջորդներուն գրեթէ բոլորն.) v չունի "կրկնէ" բառերն եւ կրկնութեանց սկզբնաւորութիւնք։ ‖213–14 $I^2$r եւ s "...արեգականէ"։ $I^2$ չունի "Այսօր Նոր շուշան" տունը. — ունի r, որ կ'ընթեռնու "ի Նորատունկ բուրաստանէ" եւ կը շարունակէ մեղեդիս. (v հոս ալ կրկնած է։) ‖214 Ձեռագիրն r եւ տպագիրն s միայն առաջին տունն ունին, ոչ երկրորդը ("Նուագ" եւն։) — $I^2$ "ադամեան կերպիւ." եւ յետոյ ունի մինչեւ "եղանակեն" բայը։ ‖216ff Ըստ v "Հոգւոյ սրբոյ գալստեան"։ — "Վայելուչս" բանիւ ըստ $R^2V^2$rs, իսկ $I^2$tv "վայելուչ բանիւ" եւն։ $I^2$ եւ r "զարարչութիւն նախ ասեմք"։ $I^2$ կը կցէ՝ "Առեմք զգրգող, Հոգին ի վերայ ջուրց գոլով։ Գոլով եւ ներգործէր զարարածոցս հիւթ։" ‖217ff Վարդավառի տաղս չունին $I^2$mr, ունին միւսներուն հետ sv։ Երկրորդ տունը ("ի վեր ի վերայ" եւն) չունի v, բայց ունի s, որ վերջին կրկնութիւնն ալ լիով ունի՝ "պղպջէր ծաղիկ ծովային։" ‖220ff Փոխման մեղեդիս ալ չունին $I^2$mr եւ նաեւ v. ունի միւսներուն հետ s։ — "Զբրաբիոն" կ'ըսէ s միայն։ ‖222 "Խաչի" մեղեդիս ունի միայն r (Թղ. 33ա) եւ տպագիրներէն $R^2$ (որմէ $V^2$t.) իսկ sv տպագիրը չունին, որ Խաչի ուրիշ մեղեդիներ կը դնեն։ — "Սեթա—" ըստ r. Բարսեղեան սրբագրած է "Սեթայ" ($R^2$), որմէ նաեւ $V^2$ եւ t. — Ըստ լոկ r "...ի յայն փայտն եմք յուսացեալ, որ Տէր Յիսուս բեւեռեցաւ." եւն. յետոյ՝ "...սուրբ Նշանիս։" ‖226 Հրեշտակապետաց ունին նաեւ $I^2$ եւ r։ ‖227 "Առաքելոց" մեղեդին ունին միայն $R^2V^2$ եւ stv։ — $R^2$ "Թադէոս." — sv "Բարթուղիմէաւ։" ‖230 Մարգարէից ունի r, բայց ոչ $I^2$ եւ v. — s "սուրբ մարգարէքն." — r "զինելու—թիւն" (փխ. "զեղելութիւն.") $R^2$ "զեղելութիւնն։" ‖232 Հայրապետաց ունին միայն $R^2V^2$ եւ stv. — Ամէնը ($R^2V^2$sv) "Հայրապետ (s Հայրապետք) Պետրոս" կ'ընթեռնուն. միայն t բրած է "Հայ-

Զընտրեալն որ ասես, մեղեդի մի ասեր: Ընտրեալդ յԱստուծոյ, ով երջանիկ սուրբ Քահանայ: Նմանեալ Ահարոնի, եւ Մովսէսի մարգարէին: Այնմ, որ զգեստուցն էր յաւրինող, զոր Ահարոն միշտ զգենոյր: Ցաւրինէր զպատմուճանն, զոր ի չորից կազմեալ նիւթոց: Ի կարմրոյ, ի կապուտոյ, ի բեհեզոյ, ի ծիրանւոյ: Թել զթելն յաւրինէր, կարգն առաջին էր կարկեհան: Եւ զաւծումն գրապանին շուրջանակի բոլորաշէն: Եւ յընթացս գարշապարին հնչէր երկիր, ցնծայր խորան: Արդ ի նոյն նմանութեան Քրիստոս զմեր տէրս յաւրինէ: Ցորժամ մտցես ի սուրբ խորանն, անդ յիշեսցես զմեր ննջեցեալսն: Ցորժամ առնես զպատարագն, յիշեա եւ զիս զթաղմամեղս: Զի եւ մեզ ողորմեսցի ի միւսանգամ իւր գալստեանն: Հաւրն փառք, Որդւոյն պատիւ եւ սուրբ Հոգւոյն այժմ յաւիտեան: Ցաւիտեանս յաւիտենից Քրիստոս աւրհնեալ ի համայնից:

---

բապետ Ա.„ (կամ այս անուն), որ այժմ աւելի յարմար է: — Հոս ալ ի վերջոյ sv կը յաւելուն երկու մեղեդի եւ ի վերջոյ “Թուրան իղաթէ„ եւն կտոր մը: ‖[234] Հոս “Ընտրեալ„ տաղէն յառաջ b սա խորագիրն ունի “Եւ ապա քարշեն զվարագուրն, եւ դպիրքն եղանակեն եւ ասեն. Ընտրեալդ„ եւն. (b չունէր Մեղեդիները:) — Խրատագիրս “Զընտրեալն որ ասես„ եւն ունին R²V stv. իսկ j այսպէս՝ “Շարական ննկարկութեան ի սուրբ եկեղեցւոյ. Ընտրեալդ„ եւն (կից ունենալով ննկարկութեան շարականն “Ցայս յարկ:„) — “Ընտրեալդ„ տաղս ունին՝ I² abj եւ m (Թղ. 131բ), q (Թղ. 74բ), r (Թղ. 58բ) եւ տպագիրքն: — I² “Ընտրեալն„ եւն: ‖[235] Միայն q “մարգարէի:„ ‖[236] Նոյն q եւ m “այն որ„ (փխ. “այնմ որ„ եւն:) — I² եւ mq “զգեստիցն եղբաւրօրող„ (փխ. “զգեստուցն էր յաւրինող„.) իսկ a՝ “այնմ որ զգեստուցն էր յօրինող„ եւն: — m “զոր Ահարոն զգեցեալ„ (փխ. “միշտ զգենոյր:„) ‖[237] Նոյն՝ m “...զպատմուճան եւ ի չորից կազմոց նիւթից. թել զթելն ...: Ի կարմրոյ„ եւն (ուստի վերջին երկու տանց կարգը տարբեր:) — I² “ի քառից„ (փխ. “ի չորից„.) a “նիւթից.„ b “նիւթոյ„: ‖[238] Միայն a “ի բեհեզենոյ.„ — ab “ի ծիրանոյ„: — Հոս q կը յաւելու տուն մ'ալ՝ “Ի վակաս Ահարոնի ականց նշմա շուրջանակին, թելն„ եւն: ‖[239] “Զաւծումն գրապանին„ ունին bjmqr եւ V²sv. (a “զօծումն գրապանին.„ I² “զօծումն գրապանին:„) R² փոխած է “օծումն գրպանակին.„ որմէ՝ t: — “Ցընթացս„ ունին նաեւ bjqr եւ տպագիրք. միայն I²m “Եւ ի ձայնս գարշապարին„ եւն: ‖[240] I² “ցընծայր երկիր, հնչէր խորանն.„ a՝ “հնչէր խորան, ցնծայր երկիր.„ b “հնչէր յերկինք, ցնծայր խորանն:„ Միւսներն ըստ այլ. (v “խորանն:„) ‖[241] Միայն a “Քրիստոս զմեզ Տէրն յօրինէր„, եւ m “Քրիստոս զմեզ յօրինէ:„ — Աւելի ետքը m այլակերպ՝ “Ցորժամ մտցէ ի սուրբ խորան, անդ յիշեսցէ զննջեցեալքս, Առաջի Տեառն Աստուծոյ՝ որ ի խաչին պատարագեալ. Զի եւ մեզ ողորմեսցի„ եւն, համանման ըլլալով I²ի: — I² ալ “մտցէ ... յիշեսցէ զմեր ննջեցեալսն„ եւն. — q “յիշեսցես զննջեցեալսն„, միւս մասերն ըստ այլ.: ‖[242] Այս տունը “Ցորժամ առնես„ եւն չունի I², այլ տարբեր տեղ՝ “Առաջի Տեառն Աստուծոյ՝ որ ի խաչին պատարագեալ. Զի եւ մեզ„ եւն (= m, տես տող 241:) — “Զպատարագն„ եւն ունին R²V²t, իսկ bjrq եւ sv “զպատարագ.„ եւն: Միայն a՝ “...զպատարագ., յիշեա եւ զմեզ զննջեցեալսն„ (= m), միւս մասերն “եւ զիս զթաղմամեղս:„ ‖[243] Միայն a սխալմամբ “Զի եւ մեզ ողորմեսցի„ եւն (փխ. “մեզ.„) — I³am “գալստեանն:„ ‖[244] “Այժմ յաւիտեան„ ունին b եւ R²V²sv, (t “յաւիտեանս.„) I²ajqr “այժմ յաւէտ:„ ‖[245] Միայն a “ի համայնիցս:„

Ե. Հոս կը սկսին Խորհրդատետրներն, դարձեալ մեծ պէսպիսութեամբ: C այսպէս է՝ “Ապա գայ առ ընծայարան սեղանոյն. եւ մատուցեալ արկն. զնշխարն: Եւ քհն. խաչակնքէ եւ դնէ ի մաղզմայն եւ ասէ. Ցիշատակ, եւն: Եւ ապա զգինին արկանէ խաչանման ի սկիհն եւ ասէ. Ցղ.„ եւն: D եւ F տես

## ՅԱՌԱՋԱԴՐՈՒԹԻՒՆ

Ե· — *Ապա յարուցեալ եկեսցէ առ ընծայարան սեղանոյն, առ որ մատուցեալ նախասարկաւագն զնշխարն, զոր առեալ քահանայն դիցէ ի մաղզմայն ասելով. Յիշատակ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ [Որ բազմեալ հանգչի յանպատում աթոռ, զմահ խաչի յանձն էառ վասն ազգի մարդկան. աւրհնեցէք, գովեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեանս։] — Եւ առեալ զգինին արկցէ խաչանիշ ի սկիհն [նոյնպէս եւ սակաւիկ մի ջուր արկցէ] ասելով. Յաղագս յիշատակի փրկագործ տնաւրէնութեան տեառն Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի։ [Որ ի կողահոս արեան աղբերէն նորոգեցան արարածք եւ անմահացան. աւրհնեցէք, գովեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեանս։]*

---

վերը. (F կ'աւելցնէ "բացեալ զսկիհն ասէ. Համբարձէք էշխանք,„ յետոյ "Յիշատակ Տեառն„ եւն, եւ "Յղ. յիշատակի„ եւն ըսելէն ետքը՝ "եւ դարձեալ ասէ. Իշչէ որդեա անյրեա„ եւն։) — I "Ապա յարուցեալ գա առընթեր ընծայարան սեղանոյն եւ ասէ. Ինչ մեղձնալ ու Աստուած բարի է. Պատմել զամենայն ապշնութիւնս. փխ.։ Եւ ասէ. Համբարձէք էշխանք։ Եւ բանա զսկիհն, առ որ մատուցեալ նախարկն. զնշխարն եւ ասէ. Ե– է–ս խըղ., զոր առեալ քհն. դնէ ի մաղզմայն ասելով. Յիշատակ„ եւն։ Առր նման է եւ "ինձ մերձենալ„ եւն սաղմոսն ունի J, զոր տես վերը հմծ. Ա սկիզբն։ J սաղմոսին կը կցէ "Յիշատակ„ եւն, առանց խրատագրի։ — K այսպէս ունի խրատագիրքս՝ "Եւ սրկն. առեալ զնշխարն եւ տա ի ձեռն։ Եւ քհն. առեալ դնէ ի մաղզմանն ասելով. Յիշատակ, եւն։ Եւ առեալ արկանէ զգինին խաչանման ի սկիհն ասելով. Յղ. եւն։„ — N² "Երկրպագեալ երիցս մտանէ ի խորանն. ապա յարուցեալ գա առ որ մատուցանէ նախարդ. դնէ զնշխարն որ է հաց ի մաղզմայն եւ ասէ քհն. զաղաւթս. Յիշատակ, եւն։ Եւ ապա առեալ զգինին խաչանման արկանէ ի սկիհն եւ ասէ զաղաւթս. Յղ.„ եւն։ — Տպագրին աւելի համաձայն են AEGHMN. ‖[247] AEGHIMN "գայ„ (= PQ) փխ. "եկեսցէ„, զոր ունին ORSTUVV²W. — I "առընթեր ընծայարան„ եւն„ (= D) փխ. "առ„. — H "սեղանին։„ — PQS "առ որ մատուցանէ„.(O "մատուցէ„։) ‖[248] AEGMN "դնէ„ (= PQ), փխ. "դիցէ„ (= ORS եւն։) H վերջին խօսքս այսպէս ունի՝ "...զնշխարն. քհն. առեալ դնէ ի մաղզման. Յիշատակ„ եւն։ ‖[249–51] Փակագծեալն "Որ բազմեալ„ ունին ձեռագիրներէն FGIJKN² եւ տպագիրներէն միայն PQ. չունին ACEHMN եւ OS ու բոլոր ՏԱ. (RUTVV²W.) ‖[252–53] Խրատագրիս մասին CDFIKN² տես քիչ մը վերը՝ հմծ. Ե սկիզբը։ Միւսներն աւելի համաձայն տպուածին։ — AEHIMN (եւ միւս 22) "արկանէ„ (= PQ) փխ. "արկցէ„. — "Խաչանիշ„ բառին տեղ "խաչանման„ ունին CDFGKN²։ G այսպէս ունի "Եւ առեալ արկանէ զգինին խաչանման ի սկիհն ասելով„ (= K)։ — "Նոյնպէս եւ սակաւիկ մի ջուր արկցէ„ փակագծեալը չունին բոլոր 22 եւ OPQS, ունին միայն ՏԱ (RTUVV²W). ‖[254–56] Փակագծեալը "Որ ի կողահոս„ (G "Ե– ի կողահոս„ եւն, N² "Ե– էջեալ ի կողահոս„ եւն) խօսքն ունին FGIJKN² եւ PQ. տես "Որ բազմեալն„՝ տող 249։ — Աս ամէնուն տեղ X այսպէս եղած է՝ "Քհն. բացեալ զսկիհն՝ խաչակնքեսցէ զնշխարն եւ դիցէ ի վայր զմաղզմայն ասելով ի ծածուկ. Օրհնութիւն Ե– փառք Հօր, եւն։ Յիշատակ, եւն։ ...Սպասաւորն... Ե– է–ս խղ. զՏէր ող., ընկալ լեցո Ե– ողորմեա։ Քհն. խաչակնքեալ ի վերայ երկոցուն՝ խաչանիշ արկցէ ի սկիհն զգինին եւ ապա կաթիլս ինչ ի ջրոյ, ասելով. Օրհնութիւն † Ե– փառք, եւն։ Յաղագս, եւն։ Ե– մի ամ ի զինուորաց տիգաւ խոցեաց զկող Կենարարին, Ե– եւ վաղվաղակի արիւն Ե– ջուր։„ Այս վերջնոյս մասին տես էջ 352։ ‖[257] ACEHIMN "ասէ„ (փխ. "ա-

*Ու ասասցէ զաղաւթս ի ծածուկ Ցովհաննու Ոսկեբերանին.* Աստուած Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ՝ զտէր մեր Յիսուս Քրիստոս զկերակուրդ ամենայն աշխարհի առաքեցեր փրկիչ եւ կեցուցիչ եւ բարերար աւրհնել † եւ սրբել զմեզ։ Ինքնին դու Տէր աւրհնեա † եւ այժմ զառաջադրութիւնս զայս։ Ընկալ զսա յերկնային քո սեղանդ։ Յիշեա որպէս բարերար եւ մարդասէր զմատուցողս եւ վասն որոց մատուցանի, եւ զմեզ անդատապարտ պահեա ի քահանայագործութիւն աստուածային խորհրդոց քոց։ Զի սուրբ եւ փառաւոր է ամենապատիւ մեծվայելչութիւն փառացդ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

*Ու սքաւղեսցէ ասելով.* Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ, եւն։ Հաստատեաց զաշխարհ։ Ամբարձան գետք։ Ի ձայնէ ջուրց։ Սքանչելի ես դու։ Տան քում վայելէ։ — [*Ու խաչակնքեսցէ երիցս ասելով.* Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ. եւ զաւրութիւն բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո։]

---

ասացէ„։) E չունի “Յովհ. Ոսկեբ.„ անունը, H “Յովհ. Ոսկիբերանոյն։„ F այսպէս՝ “Եւ ասէ զաղօթս Ոսկեբերանին.„ DGKN[2] “Եւ քհն. ասէ զաղօթս Յովհաննու Ոսկիբերան„ (GK կցեն “ի ծածուկ։„) J խորագիր չունի։ — M կը սկսի պարզ “Աստուած մեր, որ„ եւն. AGKN[2] “Տէր Աստուած մեր„ (= OPQS.) միւսները (CEDF եւն) “Աստուած Աստուած մեր„ (= ORST եւն։) ‖258 PQS “զՏէրն„ եւն։ — H “զկերակուր ամենայն„ եւն։ ‖260—61 FGKN[2] “սրբել †„ խաչանշանով, զոր “օրհնել„ բայէն քով ունէին CDGHK (= OPQ). աւելի եւս “աւրհնեա †„ ունին բոլոր ՏՊ (նաեւ T, միայն W ոչ), GKN նաեւ “օրհնեա եւ այժմ զառաջադրութիւնս զայս †։„ N[2] այսպէս ունի վերջին խօսքը “...օրհնեա զառաջադրութիւնս զայս †։„ F “...սրբել զմեզ † (լուս. “յէ․ին„.) ինքնին դու Տէր աւրհնեա զառաջադրութիւնս զայս †„ (լուս. “յընծայն„)։ ‖262 DFN[2] “զմատուցողքս„. — DFG “եւ վասն որոյ մատուցանի„ (այլք “որոց„)։ ‖263 D “անդատապարտս պահեա„ եւն։ ‖264 F “փառաւորեալ է„ (= V[2]) փխ. “փառաւոր։„ — A “մեծվայելչութիւն„ (= OPUS)։ ‖266 Հոս կը կցեն FIJ “Հոգի սուրբ եկեսցէ„ եւն խօսքը, տես տող 269։ ‖267 PQ “Եւ սքողեսցէ ասելով Սղմ. ՂԲ։„ ACEIMN “սքողէ ասելով„ (E կցէ “այս է.„) H “Եւ սքողէ զսկիհն ասելով.„ GK “Եւ ծածկէ դաստառակաւն եւ ասէ Սղմ. Տէր„ եւն։ N[2] “Եւ ապա սրկ. ծածկէ դաստառակաւն ասելով.„ J խրատագիրս չունի. D “Եւ ապա սրկն. ծածկէ դաստառակաւ ասելով. F տես քիչ մ՚եաքն։ — Սաղմոսին առաջին բառերն ունին մեր դրածին պէս ACEGHIM եւ OPST. միայն սկիզբն ունին DFGKJNN[2] եւ RUVV[2]. ամբողջն ունին QWX. (G մինչեւ “հաստատեաց զաշխարհ„, եւ յետոյ՝ “Զփոխն լման ասա։„ — Q եւ X վերջը կը կցեն “փառք Հօր„ եւն։ ‖269—70 փակագծեալս ունին PQOX. (O “Դարձեալ. Գ. անգամ խաչակնքէ ասելով. Հոգին †... է վերայ տեղ.„ X “Ասոէն խաչակնքեսցէ զընծայսն ասելով. Հոգին սուրբ եկեսցէ †„ եւն։) Նոյնն ունին FIJ վերը (տես տող 266). F այսպէս՝ “Եւ դարձեալ խաչակնքէ եւ ասէ Հոգին սուրբ եկեսցէ եւ զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի ի վերա տեղ„ (= O)։ Երիցս կրկնէ։ Եւ ապա ծածկէ դաստառակաւն եւ ասէ։ Տէր թագաւորեաց վայելչութիւն։ Եւ առեալ խունկ„ եւն։ I նոյն տեղը լուսանցքի վրայ (Թղ. 14բ) “Հոգին սուրբ„ եւն, նոյնպէս J որ կը կցէ՝ “Գ. ասա։ Տէր թագաւորեաց„ եւն։

Զ. ‖272 ACEHIMN “Եւ արկանէ խունկ ասելով.„ PQ “եւ արկանէ զխունկն ասելով.„ (S ալ որ “արկցէ„ ունի ըստ ORTVV[2]W, կ՚ըսէ “զխունկն.„)

## ԽՆԿԱՐԿՈՒԹԻՒՆ

Զ. — *Եւ արկցէ խունկ ասելով.* Խունկ մատուցանեմ առաջի քո Քրիստոս բուրումն հոգեւորական։ Ընկալ ի սուրբ, յերկնային եւ յիմանալի քո մատուցարանդ ի հոտ անուշից։ Առաքեա առ մեզ փոխարէն զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյդ սրբոյ։ Եւ քեզ մատուցանեմք զփառս ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյդ սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ի խնկարկել տեղանոյն դպիրքն Երգեն։ Ցայս յարկ նուիրանաց ուխտի տեառն տաճարիս, ժողովեալքս աստանօր ի խորհուրդ պաշտաման պաղատանաց առաջիկայ սուրբ պատարագիս, խնկաւք անուշիւք խումբ առեալ պարեմք ի վերնայարկ սրահս խորանիս։ Ուղղութեամբ ընկալ զաղաւթս մեր, որպէս բուրումն անուշահոտ խնկոց տաշխից եւ կինամոնաց. եւ զմատուցողքս պահեա սրբութեամբ միշտ եւ հանապազ քեզ սպասաւորել։ Բարեխաւսութեամբ մաւր քո եւ կուսի, ընկա՛լ զաղաչանս քոց պաշտաւնէից։ — Որ գերագոյն քան զերկինս պայծառացուցեր սուրբ զեկեղեցի արեամբ քո Քրիստոս. եւ ըստ երկնայնոցն կարգեցեր ի սմա զդասս առաքելոց եւ մարգարէից, սուրբ վարդապետաց։ Այսաւր ժողովեալ դասք քահանայից, սարկաւագաց, դպրաց եւ կղերիկոսաց, խունկ մատուցանեմք առաջի քո տէր, յաւրինակ ըստ հնումն Զաքարիայ։ Ընկա՛լ առ ի մէնջ զխնկանուէր մաղթանս, որպէս զպատարագն Աբէլի, զՆոյի եւ զԱբրահամու։ Բարեխաւսութեամբ վերին քո զաւրաց միշտ անշարժ պահեա զաթոռ հայկազնեայց։ — Խնդա յոյժ դուստր լուսոյ, մայր սուրբ կաթուղիկէ մանկամբք քո Սիոն, զարդարեալ պճնեա հարսն պանծալի երկնանման լուսա-

---

D "Եւ տուեալ զբուրվառն ի ձեռն քհ.ին խնկով եւ ինքն առընթեր նմին. եւ քհն. խնկէ հաւասար յեկեղեցին եւ ասէ զաղ." FGK "Եւ առեալ խունկ խնկարկէ ասելով" (F "եւ ասէ։") $N^2$ "Եւ տուեալ խունկ ի ձեռն քհ.ին եւ ինքն առընթեր ունելով, խնկարկէ շուրջ զսեղանովն եւ ասէ զաղաւթս." (= D.) — A "Խունկ մատուցանեմ," եւն։ — H "առաջի քո Տէր բուրումն ...ընկալ զու ի սուրբ" եւն։ ‖274 F "ի հոտ անուշիցդ։" DFJ$N^2$ "Ե- առաքեա" եւն։ — $N^2$ "...առաքեա ի մեզ փոխարէն զշնորհս Հոգւոյդ" եւն։ (չունի "եւ զպարգեւս։") ‖275 DFJ$N^2$ "եւ քեզ փառս մատուցանեմք" եւն. H "քեզ մատուցանեմ զփառս" եւն։ ‖276 CF "...ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյդ, այժմ" եւն։ ‖277 Տաղս "Ցայս յարկ" չունին Խորհրդատետրներն եւ Դպրութեանց ալ մեծագոյն մասն, միայն $I^2$Jabj եւ տպագիրք $R^2V^2$stv։ — Վերը գրուած խորագիրն է ըստ $V^2$. այլք առ հասարակ "Շարական խնկարկութեան" (t կցէ "պատարագի.") j խորագիր չունի հոս տեղ (տես տող 234). նոյնպէս J չունի. — Միայն a' "...նուիրանաց ուխտի–" եւն։ ‖278 "Տաճարիս" ամէնքը, միայն j եւ t "տաճարին։" — $I^2$ "պաշտաման" (փխ. "պաշտաման")։ ‖281 Լոկ sv "որպէս զբուրումն։" — Միայն $I^2$ "խնկոց տաշխից" եւն. — v "զմատուցողս". — սխալմամբ a' "...հանապազ զքեզ սպասաւորել"։ ‖285 Միայն v "արեամբ քո" եւն։ — $I^2$ "...ի սմա զդասս" եւն. (փխ. "զդասս։") ‖286 Jabj եւ $R^2$ "...առաքելոց, մարգարէից" եւն։ ‖287 $I^2$v "կղերիկոսաց" եւն։ ‖288 Ja "...օրինակ ...Զաքարիայ." (նաեւ v "Զաքարիայ։") ‖289 Լոկ a "զխնկանուէր մաղթանս" եւն։ — Ja "որպէս պատարագն" եւն. — bs "եւ զԱբրահամու։" ‖290 $I^2$bs "քո զաւրացդ" եւն։ ‖291 $I^2$ "Հայկազեան." Jab "հայկազնեայս." jv "հայկազնեայ." s "Հայկազանցս։" — $I^2$Jabj "մանկամբ քո Սիովն" (a Սիոն, bj Սիօն.) տես նաեւ $R^2$.

ճեմ խորան: Զի ածեալն Աստուած, էնն ի յէէն անծախապէս ի քեզ միշտ պատարագի. Հաւր ի հաշտութիւն, մեզ ի քաւութիւն բաշխէ զմարմին եւ զարիւն իւր սուրբ: Վասն իւր կատարմանն սուրբ տնաւրէնութեանն, շնորհէ զթողութիւն կանգնողի տաճարիս: — Զանապական կոյսն Մարիամ աստուածածին խոստովանի սուրբ եկեղեցի. ուստի տուաւ հացն անմահութեան եւ բաժակ մեզ ուրախարար. տուք աւրհնութիւն նմա հոգեւոր երգով:

# Դ. ԵՐԱԽԱՅԻՑ ՊԱՏԱՐԱԳ

## ՄԱՍՆ Ա.

Է. — Եւ երիցս երկրպագեալ քահանայն, համբուրեսցէ զսեղանն: Եւ սարկաւագն կացեալ ի մէջ տաճարին, ձայնեսցէ ասելով. Աւրհնեա տէր: — Եւ քահանայն ի ձայն ասասցէ. Աւրհնեալ թագաւորութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

Եւ սկսանիցին այլ եկեղեցականք ժամամուտ ըստ պատշաճի աւուրն:

---

‖[292] I²J “զարգարեա (փխ. զարգարեալ„) պճնեա„ եւն. — I²Ja եւ R²V²s “պճնեա (tv “պճնեալ„.) bj “զարգարեալ պճնեալ հարսն„ (j “զհարսն„) եւն: ‖[293] J “...խորանս:„ — Ամէնքը “էնն ի յէէն„ (Ja “յէնն„ եւն.) միայն j եւ R² “մնն ի յէէն,„ որոնց կը հետեւի նաեւ s (միայն տպ. 1723, միւս տպ sի ունի “էէն:„) ‖[294] V² “...զմարմինն„ եւն: ‖[295] I²Jabjsv “կատարմանն„. — abj “տնօրէնութեան„, եւն: ‖[296] “Շնորհէ„ ունին I²b եւ R²s. իսկ Ja “շնորհեա„, j եւ tv “շնորհեալ„: ‖[296–99] Այս տան մէջ՝ jb սխալմամբ “սուրբ զեկեղեցի„, յետոյ Ja “տուք օրհնութիւն+„ եւն: I² միայն “Զանապական կոյսն„ բառերն ունի, անկէ ետքը “Մայր հաւատոյ„ տաղէն մասեր (Թղ. 20բ): Իսկ j ամէնէն վերջը կը կցէ սա կտորն ալ. “Մաքուր եւ անբիծ կոյս յետ ծննդեան, որ մարմնով ծնար զարձակողն ի կապից մահու, բարեխօս լեր վասն անձանց մերոց, փրկել զմեզ ի սպառնալեաց գեհեննոյն:„

Է. ‖[303ff] DF շատ տարբեր ունի խրատագիրքս. (տես վերն.) որոնց պէս N² “Եւ իջանէ քհ. բուրվառովն ի մէջ եկեղեցւոյն եւ խնկարկէ ամենայն ժողովրդեանն եւ դառնայ ի խորանն խնկարկէ եւ տայ զբուրվառն ի սարկաւագն, եւ սրգն. հրաման առեալ ձայնէ ի մէջ եկեղեցւոյն եւ ձայնէ ի խորանն: Աւրհնեա Տէր: Ի ձայն ասէ. Աւրհնեալ Թագաւորութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյ սրբոյ: Եւ սկսանին ժամամուտն ըստ պատշաճի աւուրն:„ J խրատագրերս չունի, այլ “Ցայս յարկ„ տաղէն ետքը կը կցէ “Քհն. ասէ զաղաւթս. Աւրհնեալ սուրբ եւ անմահ թագաւորութիւնդ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն: Ժամամուտք կարգաւ„ (— կը դրուին ժամամուտք —), յետոյ (Թղ. 69ա) “Աւրհնութիւն եւ փառք Հօր: Տէր Աստուած մեր որոյ կարողութիւնդ„ եւն (տես տող 518:) — Միւսներն աւելի համաձայն տպուածին, որոնց մէջ C շատ համառօտ է. “Երիցս երկրպագեալ քհն. եւ սրկն. ձայնէ. Աւրհնեա Տէր: Եւ քհն. ասէ. Աւրհնեալ թագաւորութեան„ եւն: Եւ սկսանին այլքն զժամամուտ ըստ պատշաճի աւուրն:„ GKN “Երիցս երկրպագեալ„ եւն (չունին “եւ„:) — AEGHIKMN “համբուրէ„ փխ. “համբուրեսցէ„: — M “եւ սրկն. ձայնեսցէ ասելով„ (չունի “կացեալ ի մէջ տաճարին.„) — GHKN = C “ձայնէ„ (փխ. “ձայնեսցէ„ ըստ AEM եւն.) — PQ ալ սկիզբն այլազգ՝ “Եւ ապա խնկելով ի մէջ եկեղեցւոյն իջանէ հանդերձ սարկաւագօքն, եւ ելեալ ի վեր՝ երիցս երկրպագեսցէ զսեղանն: Եւ նախասարկաւագին ի մէջ եկեղեցւոյն կալով՝ ձայնեսցէ. Աւրհնեա Տէր„ եւն: ‖[304–305] AEGHIKM “Եւ քհն. ի

## Ժ Ա Մ Ա Մ Ո Ւ Տ Ք

Ըստ կարգի աւուրց պահոց, տաւնից տէրունականաց, եւ ամենայն սրբոց. — Պահոց։ Որ ի Հաւրէ առաքեցար փրկիչ՝ եւ մարմնացար ի սուրբ կուսէն, որ վասն մեր ի յերկնից իջեր՝ եւ լուսաւորեցեր զտիեզերս. զխաղաղութիւն քո տուր մեզ տէր, որ խաղաղութեանց ես թագաւոր. զխաղաղութիւն եւ ողորմութիւն. որ յամենայնի ես դու կարաւղ՝ մարդասէր։ — Չորեքշաբ. Եւ Ուրբ.։ Որ ըստ ամենայն միտս անցանէ՝ զխաղաղութիւն քո Աստուած՝ տուր մեզ հանապազ զքեզ աղաչեմք։ — Մարտիրոսաց։ Ի տաճարի սրբոց, եւ յիշատակի սրբոց մարտիրոսաց զձեռս համբառնալով աղաչեմք. բարեխաւսութեամբ սոցա եւ աղաւթիւք զկենդանութիւնս մեր խաղաղացո Աստուած, որպէս մարդասէր։ — Ճգնաւորաց։

---

ձայն ասէ.„ C "Եւ քհն. ասէ.„ N "Քհն. ձայնէ.„ N² պարզ "Ի ձայն ասէ։„ Միւսներն ըստ տպ.։ — FGHK "Թագաւորութիւն Հօր„ (= ST.) միւսներն "Թագաւորութիւնն„ ենն. C սխալմամբ "Աւրհնեալ թագաւորութեան Հօր„ ենն։ ||306 AEGHIKMN "Եւ սկսանին այլ (I չունի "այլ„) եկեղեցականքն„ ենն. C "Եւ սկսանին այլքն զժամամուտ„ ենն. DFN² "Եւ ապա սկսանին (F եւ ապա ասեն, N² եւ սկսանին) ժամամուտ ըստ պատշաճի աւուրն։„ Իսկ PQ "Եւ սկսանին դպիրքն ժամամուտ„ ենն. OS "Եւ սկսանիցին այլ եկեղեցականքն„ ենն. RUVW "Եւ սկսցին այլ եկեղեցականքն„ ենն։ J անխորագիր։ ||308—309 "Ժամամուտք ըստ կարգի„ ենն. չեն գրեր բոլոր Խորհրդատետրերն՝ թէ՛ ձեռագիր (A—N²), բաց ի J ձեռագրէն, թէ տպագիր (O—X) բաց ի T (էջ 7—13), V,V² (էջ 57—67) եւ W (էջ 9—18.) նոյնն այս տպագիրքն ալ ուրիշ տեղ գրած են. նաեւ R² չէ գրած ժամամուտերն, այլ սա խորագիրը. "Եւ ասի ժամամուտ ըստ պատշաճին։ Կայ եդեալ ի Ճաշու Ժամամուտս (տպ. Ամսթերտամ ժամագրոցն.) որոց սրբագրութիւնքն կան ի վերջն Սպասաւորութեանս այսորիկ։„ Ունին բոլոր ձեռագիր Դպրութիւնք եւ Մանրուսմունք (a—p), ի բաց առեալ bemqr՝ որ չունին, ունին նաեւ տպագիրքն (V²stv ենն։) — Ոմանք ժամամուտերու կարգը փոքրիկ տարբերութեամբ ունին, այսպէս ի մասնաւորի j եւ v, որ աննշան է համեմատութեան համար։ — Խորագիրը "ժամամուտք ըստ կարգի„ ենն է ըստ V²Wv, որունց նման՝ c "ժամամուտք ըստ պատշաճից ամենից տէրունականաց տօնից եւ սրբոց մարտիրոսաց։„ Միւսներէն adgklnopq "Ժամամուտք կարգաւ (J եւ a "Ժամամուտներն կարգաւ.„ d լոկ "Ժամամուտք.„ k "Ժամամուտք կարգաւ եդեալ„, l "Ճաշու ժամամուտք կարգաւ„.) իսկ fh եւ s "Եւ ասի ժամամուտ ըստ պատշաճի աւուրն.„ i՝ "Եւ ասին ժամամուտք ըստ գրեցելումդ.„ j՝ "ժամամուտք եկեղեցւոյ։„ ||309 "Պահոց„ խորագրի տեղ J "Պահոց Բշ.ի, Գշ.ի, Եշ.ի„ (= cdghi). a՝ "Բշի, Գշի, Եշի Պահոց.„ lmopv "Պահոց Բշ. Գշ. Եշ.։„ Ինչպէս հոս՝ յաջորդ խորագիրներուն մէջ ալ օրինակք իրարմէ կը խոտորին՝ համառօտելով նոյները, ենն։ Աննշանները չենք դներ մի առ մի։ — Ժամամուտս պահոց չունի j. միւսներն ըստ տպ. (միայն a՝ "որ ամենայնի ես դու կարող„ ենն, եւ Jah "մարդասէր Տէր։„) ||313—14 22. "Դշ. եւ Ուրբ.„ (l "Դշ. եւ Ուրբ.։„) — Սխալմամբ կ՚ըսեն acdhj "որ ըստ ամենայնէ միտս„ ենն. ամէնքը՝ ձեռագիր եւ տպագիր՝ "...ըստ ամենայն (կամ ամենայնի) միտս անցանես„ ենն. (ուղիղն է՝ "Որ ...անցանէ՝ զխաղաղութիւն„ ենն.) — j "հանապազ աղաչեմք„ (չունի "զքեզ„) եւ կը կցէ կրկնելով (Թղ. 152ա) ըստ Լեհահայոց Պատարագամատուցաց՝ "Ննջեցելոց. Որ ըստ ամենայնի միտս անցանես, հանգիստ յաւիտենական շնորհեա հաւատացեալ ննջեցելոց մերոց եւ լոյս մշտնջենաւոր լուսաւորեացէ զհոգիս նոցա„։ ||315—17 Ըստ n՝ "ի տաճարի սրբոց մարտիրոսացն՝ զձեռս„ ենն (չունի "եւ յիշատակի սրբոց„.) — eg "մարտիրոսացն.„ — j "աղաչեմք զՔեզ բարեխաւսու-

*ճգնաւորք Քրիստոսի, որք տանջանաց անաւրինացն համբերեցիք. եւ զմոլութիւն կռոցն խափանեցիք, դասաւորեալք ընդ հրեշտակս ի յերկինս. որք ունիք զհամարձակութիւն ի Քրիստոսէ, բարեխաւսեցէք կեցուցանել զանձինս մեր. զձեզ աղաչեմք: — Կ–ր–ւէ: Միածին Որդի եւ Բանդ Աստուած, եւ անմահ էութիւն. որ յանձն առեր մարմնանալ ի սրբուհւոյ աստուածածնէն եւ ի միշտ կուսէն անփոփոխելիդ. մարդ եղեալ խաչեցար Քրիստոս Աստուած. մահուամբդ զմահ կոխեցեր. մինդ ի սրբոյ Երրորդութենէն փառաւորակից ընդ Հաւր եւ ընդ սրբոյ Հոգւոյն. կեցո զմեզ:*

*Ստեփանոսի: Ցնծա այսաւր ցնծա եւ զուարճացիր կաթուղիկէ սուրբ՝ յիշատակաւ սրբոյն Ստեփանոսի Նախավկային Քրիստոսի՝ վկայեցելոյ Հաւր. որ աղաւթիւք բանայր զերկինս, զոր փակեաց Ադամ. եւ հրեշտակակերպ տեսլեամբ տեսանէր զկերպարանն Հաւր ի կերպի Ադամայ Նստեալ յաթոռ փառաց. որ զքազմութիւն քարանցն որպէս զծաղիկս հաւաքելով բոլորէր պսակս փոխանակ փշոցն եւ եղեգանն: Եւ զմարտիրոսական արիւնն խառնէր ընդ փրկական արեանն Քրիստոսի հոսեցելոյն ի կողէն: Վասն որոյ գերազանցեալ ի փառս առաւել քան զամենայն սուրբս՝ հայցեա եւ մեզ ի վերնատունէն զպարգեւս կենաց անվախճանից՝ եւ զմեծ զողորմութիւն: — Ստեփանոսի: Ցորովայնէ ընտրեալ՝ սուրբ Ստեփանոս, յորովայնէ ընտրեալ՝ սուրբ Ստեփանոս, վկայ ճշմարիտ առաքելական քարոզութեանցն. որ՝ ի*

---

*թեամբ„ եւն.* — a *"...խաղաղացո Աստուած մեր„ եւն.* — Ja *"որպէս մարդասէր Տէր:„* ‖317–21 *Ճգնաւորացը չունի* j *եւ նաեւ* o (*թուղթ ինկած ըլլալով:*) — *"Համբերեցէք„ լաւ եւս՝* fghknp. *"համբերեցին„՝* adl. — *նոյնպէս* Jafghklp *"խափանեցէք.„* — *փխ. "Դասաւորեալք„* ghklnp *"դասաւորեալ էք„ եւն.* — *"Ի յերկինս„ չունի* d. — Jfghiklnp *"ունիք համարձակութիւն„ եւն.* — *զձեզ աղաչեմք„ չունի* c: ‖321–25 *Միայն* c *"կիւրակէից.„* f *"կրկ. յր:.* — *Գրեթէ ամէն* 22. (Jacdfghijklnop *եւ* s) *"ի սուրբ Աստուածածնէն„* (op *"...յԱստուածածնէն„.*) eq *եւ այլ տպ.* (*նաեւ* s) *"ի սրբուհւոյ„ եւն.* — *"...ի միշտ կուսէն անփոփոխելիդ. մարդ„ եւն՝ այսպէս կը տրուհեն. նոյնպէս ամէն* 22. *եւ* s (*"անփոփոխելի„ կ'ըսեն* Jaiklnop.) *իսկ* n *յաջորդն իբր նոր բաժին կը սկսի՝ "Փխ. Մարդ եղեալ„ եւն.* — *"Մահուամբդ զմահ կոխեցեր„ չունի* j. *"մահուամբ„ կ'ըսեն՝* Jacghiklnop *եւ* sv. — on *"յԵրրորդութենէն.„* Jc *"Երրորդութենէդ.„* ao *"Երրորդութենէ.„* — fgi *"եւ ընդ սուրբ Հոգւոյն.„* — Jaf *"Հոգւոյդ: —* ‖326–34 *Ստեփանոսի այս ժամամուտը չունին* dj. (p *ձեռագրի մէջ ալ սկիզբը պատռած է.*) — c *"Ստեփանոսի Նախավկային.„* n՝ *"Ստեփա. Հց.„* — *"կաթուղիկէ սուրբ„ ունին նաեւ* fgiklnop *եւ* s (*եւ այլ տպ.*) *"կաթուղիկէ եկեղեցի սուրբ„՝* Jacg (*առանցմէ* a *չունի "սուրբ„.*) — Jklno *"յիշատակի սրբոյն„ եւն.* — *"Քրիստոսի„ չունի* c. — a *"վկայեցելոյն Հօր.„* h *"վկայեցելոյն„ եւն.* g *"...զոր փակեաց Ադամ„ եւն.* — Ja *"տեսանէր„* (*փխ. "տեսանէր.„*) — f *"զկերպարան.„* h *"զկերպարանս.„* — acnop *եւ* v *"է յաթոռ„ եւն.* — *"Փոխանակ փշոյն„ ունին* ghikop. — Ja *"եւ մարտիրոսական արիւնն„ եւն.* — s *"ընդ փրկականի արեանն„ եւն.* Jak *"ընդ փրկական արիւն„ եւն.* — Ja *ասկէ ետքը թերի են՝ "...արեան Քրիստոսի հոսեցելոյն՝ ի փառս առաւել քան զամենայն սուրբս„ եւն* (*փխ. "...հոսեցելոյն ի կողէն. Վասն որոյ գերազանցեալ ի փառս„ եւն.*) — i *"գերազանցեալ ի փառս„ եւն.* — fh *"քան զամենայն սուրբսն„ եւն.* — a *"հայցեա ի վերնատունէն„ եւն* (*չունի "եւ մեզ.„*) i՝ *"հայցեսցէ եւ մեզ„ եւն,* v՝ *"հայցէ եւ վասն մեր„ եւն.* — Jcgp *"կենացն անվախճանից.„* klo *"կենացն անվախճանիցն.„* a *"կենաց անվախճանիցն:„* ‖335–39 *Ստեփանոսի երկրորդ ժամամուտս չունի* d, *ունի* j

*վերայ անաւրէն քարաձգողացն աղաւթէիր առ Քրիստոս Աստուած՝ մի՛ համարիր սոցա զայս ի մեղս. ի ձեռն սորին բարեխաւսութեան շնորհեա մեզ զմեծ քո զողորմութիւն։*

*Ծննդեան։ Աստուածածին անհարսնացեալ, զԲանն անսկիզբն յղացար, եւ զԱստուածն անիմանալին ծնար. զանպարագրելին ի գիրկս քո բարձեր, նմա անդադար բարեխաւսեա վասն անձանց մերոց։ — Ծննդեան։ Աստուածածին զքեզ խոստովանեալ երկրպագէ եկեղեցի ուղղափառաց, քանզի ուր քերովբէքն բազմաչեայք եւ աթոռք հրանիւթք եւ վեցթեւեան սերովբէքն նայել ո՛չ իշխէին, կրեցեր անսերմնապէս յանապականութեամբ ի յարգանդի քում որպէս աղախին զտէր, եւ ծնար որպէս մարդ զԱստուածն բոլորից զմարմնացեալն առ ի քէն՝ զանճառ զԲանն, ի փրկութիւն աշխարհի եւ կեանք անձանց մերոց։ — Ծննդեան։ Աղաչեմք զքեզ սուրբ կոյս Մարիամ աստուածածին. բարձրելոյն զաւրութեամբն հովանաւորեալ, եւ սուրբ Հոգւոյն եկաւորութեամբ լուսաւորեալ. որ զամենայն գոյութեանց զստեղծիչն յղացեալ ծնար անճառապէս. մարմնացելոյն առ ի քէն բարեխաւսեա կեցուցանել զանձինս մեր։*

---

*ալ։ — Կրկնութեան մէջ երկրորդ անգամ “սուրբ Ստեփաննոս„ բառերը չեն գրեր* Jagkp, *իսկ* C “*...յորովայնէ ընտրեալ, նոյն է„ (այսինքն՝ “սուրբ Ստեփ.„)* n “*...յորովայնէ ընտրեալ, կէնէ„։ —* Jacj “*առաքելական քարոզութեան„,* go “*...քարոզութեանն.„ —* J “*քարաձգողաց.„ — “Մի՛ համարիր սոցա զայսմեղս„ ունին* afgi *եւ* sv. (Jig “*սոցա ի մեղս„.)* klnop “*մի՛ համարիր սոցա մեղս.„ —* c “*Տէր ի ձեռն„ եւն„ եւն,* sv “*Արդ ի ձեռն„ եւն. —* Jafilnop “*սորա„ (փխ. “սորին„). —* TVV²sv “*բարեխօսութեանն.„ իսկ* Ja “*...ի ձեռն սորա բարեխօսութեամբ (= i) շնորհեա մեզ մեծ ողորմութիւն.„ —* v “*շնորհեա մեզ Տէր„ եւն.* n “*շնորհեա մեզ քո„ եւն (չունի “զմեծ.„) իսկ* hklnop *չունի “քո„։* ‖[340–42] *Խորագիրը* c “*Ծննդեան եւ ամենայն տօնից Աստուածածնի.„* dj *լոկ “Աստուածածնին.„ — “Աստուածածին անհարսնացեալ„ ամէն* 22 *եւ* VV²sv. *Թաքսեղեան սրբագրած էր “...առն անփորձ„, զոր նոր գրիչ մը լուսանցքի վրայ գրեր է նաեւ ի* c. *իսկ* TW *եւ* t *բարեփոխած են “Աստուածածին անհարսնեալ„ եւն. — Նոյնպէս ամէն* 22 “*զԱստուածն անիմանալին ծնար„ (*j *զանիմանալի,* nop *զանիմանալին) եւ տպագիրներէն* VV²sv *եւն (*v “*անիմանալի.„) Թաքսեղեանի սրբագրութիւնն “զԱստուածն անբովանդակելին ծնար„ պահած են* TW. — a “*Ե- զանպարագրելին է ... ...„ (“ի գիրկս կրեցեր„ ունին նաեւ* dgiklnop, *իսկ* hj “*ի գիրկս քո կրեցեր.„) տպագիրք (նաեւ* sv) *եւ* cef “*ի գիրկս քո բարձեր։„* ‖[342–48] *Ծննդեան երկրորդ ժամամուտ չունին* dj. — fghklnop “*խոստովանեալ երկրպագէ եկեղեցի„, միւսները “երկրպագէ եկեղեցի,„ միայն* Ja “*խոստովանեալ եկեղեցի„ (չունին “երկրպագէ.„) —* Ja “*քերովբէքն բազմաչեայ„ եւն. — Լաւ եւս “նայել„ ունին* Jafghiklnop, *միւսներն եւ տպագիրք “նայիլ։„ — “Կրեցեր անսերմնապէս յանապականութեամբ ի յարգանդի քում„ շատ տպագիրք եւ մեծ մասն* 22. *բայց* Jcfn *եւ* Tstv “*յանապականութեամբ ի յարգանդի„ եւն. —* a “*...զՏէր, զոր եւ ծնար„ եւն։ —* ghiklnop *եւ* v “*որպէս զմարդ զԱստուածն„ եւն, (այլք “որպէս մարդ„ եւն։) —* Ja “*...Աստուածն բոլորից մարմնացեալն„ (փխ. “զմարմնացեալն.„) —* gfhiklnop “*զմարմնացեալն է քէն„ (=* a, *փխ. “առ ի քէն„.) —* a “*ի փրկութիւն յաշխարհի„ եւն։* ‖[348–52] *Ծննդեան երրորդ ժամամուտ չունի* d, *բայց ունի* j *ալ. — Միայն* ae *եւ* TWt “*բարձրելոյն զօրութեամբ.„ միւս ամէնքը՝ ձեռագիր ու տպագիր՝ “...զօրութեամբն.„ —* c “*Ոգւոյն„ — միայն* jk “*եկաւորութեամբ.„ —* n *եւ* v “*զամենայն գոյութեանց ստեղծիչն„ եւն. —* Ja *չունին “մարմնացելոյն առ ի քէն„ բառերը.* fgiklnop

*Ալէլուի*: Ծերունին այսաւր Սիմէոնի՝ Հոգւովն գայր ի տաճարն, երեւելով քերովբէիցն վեհագոյն. որոց թեւաւքն սաւառնեալ ոչ իշխէին Նայիլ ի յահեղ փառացն. սա ի գիրկս իւր բարձեալ համբուրէր համարձակապէս, եւ գգուէր որպէս զմանուկ. եւ աղերսելով հայցէր արձակիլ ի խաղաղութիւն:

*Ցեառնընդառաջին*: Անսկզբնական Բանդ Աստուած ի վերջին աւուրս յանձն առեր լինել մարդ ի կուսէն, եւ արարիչդ յաւիտենից փակեցար ընդ ժամանակաւ, սուրբ տէր սրբութեանց, եւ անկարաւտ մաքրութեանց. եկիր ի տաճարն քառասնաւրեայ զաւրինացն կատարեցեր զարդարութիւն. զոր բարձեալ Սիմէոնի զանպարագրելիդ ի գիրկս իւր՝ հայցէր. որ արձակիչդ ես կապելոց արձակեա զիս ի խաղաղութիւն: Վասն որոյ ընդ ծերունւոյն Սիմէոնի վերագոչեմք առ քեզ տէր. սուրբ, սուրբ, սուրբ՝ տէր զաւրութեանց. լի են երկինք եւ երկիր փառաւք քո ի փրկութիւն մեզ՝ Քրիստոս Աստուած, փառք քեզ:

[*Թագաւորաց*: Որպէս յետ աստուածասէր թագաւորին Խորայէլի Եզեկիայ յարոյց Աստուած զՈվսիայ որ զամենայն կռապաշտութիւն ի բաց ընկէց, սոյնպէս եւ զբարեպաշտն Կոստանդիանոս որ զԱրիոսի զմոլութիւն խափանեաց. եւ զմեծն Թէոդոս յարոյց աստուածային Նախանձու վառեալ, ովք սուրբ Հոգին հայհոյէին: Բայց դու ով աստուածարեալ եւ ուղղափառ հաւատոյ գլուխ, փրկեա զմեզ ի մարդապաշտ հայհոյութենէ: Վասն որոյ աւրհնեմք զքոյ գալուստդ՝ զբարեպաշտ թագաւորին, ի Քրիստոսէ խնդրելով զմեծ զողորմութիւն:]

---

ընդհականակն “մարմնացելոյդ (fil “մարմնացելոյն„) առ ի քէն Աստուծոյ„ եւն. — hjklnop “բարեխօսեա փրկել„ (փխ. “կեցուցանել„). — ch կը յաւելուն “...զանձինս մեր, չէ որդւոյն„ ||353—57 Սիմէոնի ժամամուտս չունի d. — a “Սիմէոնի ծերունին.„ fo “Սիմ. գլ.„ ciklp “Տեառնընդառաջին„ կ'ըսեն խորագիրն (= v.) — a “Ծերունին Սիմէոնի այսօր„ եւն. — j “ի տաճար„. — Jaghlnop “թեւաւքն„ (k թեւաւք), cfij եւ V²sv “թեւօքն.„ TW եւ t “թեւովքն.„ — Ja “սաւառնացեալ„ (փխ. “սաւառնեալ.„) — Jafghijklnop հոս ալ “Նայել„, այլ “Նայիլ„ (v “Նայէլ.„) — Ja “ի յահեղ փառաց նոցա„. (այլք “...փառացն.„ n “...փառացդ.„) — J “սա ի գիրկս իւր բարձեալ„ ունի լաւագոյն. — ghjklnop “որպէս մանուկ„ (այլք “...զմանուկ„.) ||358—66 “Տեառնընդառաջին„ ժամամուտս չունին J եւ djo: — Խորագիրը չունի c, իսկ i “փխ.„ k “Կց.„ — fhln “է յանձն առեր„ եւն. — sv “լինել„ (փխ. “լինել.„) — i “ի կուսէ.„ a “ի կուսէն, Արարիչդ Աստուած յաւիտենից„ եւն (փխ. “եւ արարիչդ յաւիտենից„ եւն.) — c “սուրբ Տէր սրբութեանց.„ իսկ ac “սուրբ տէր զօրութեանց.„ — a “զաւրինացն (փխ. “զաւրինացն„) կատարեցեր զարդարութեան„ եւն. — “զանպարագրելիդ„ ունին i եւ n եւ տպագիրք. իսկ acfghklnp “զանպարագրելին է եւ ի հայցէր„. (առանցմէ միայն acg ունին “...ի գիրկս իւր հայցէր„ միւս ձեռագրաց պէս.) — “Սիմէոնի„ չունին acfghiklnp, այլ՝ “ընդ ծերունւոյն վերագոչեմք քեզ„ եւն. (cfi “առ քեզ.„) — sv “լի են... փառօք քովք„ եւն: ||367—74 Փակագծեալ ժամամուտս “Թագաւորաց„ մին է այն երկուքէն, զոր Բարսեղեան ընկած է, ուստի չունին TV²: կամ Ա. խմբի տպագիրք: Նոյնն ունին sv եւն, եւ ձեռագիրներէն՝ Jafghiklnop, չունին cdj. Մենք դրինք ըստ a, եւ հոս կը նշանակենք միւսներուն տարբերութիւնքն: — v “Եզեկիա.„ — J “զՈվսիա.„ klnop “զՅովսիա.„ gfs “զՅովսիայ.„ h “զՅովկիայ.„ v “զՅովսէ.„ — lop “զկռապաշտութիւնն.„ n “զկռապաշտութիւնս.„ ihk “կռապաշտութիւնս.„ fgv “կռապաշտութիւնն.„

*Զօրականաց։ Զաւրական եւ վկայ ճշմարիտ՝ քաջ նահատակդ Քրիստոսի սուրբդ Թէոդորոս. որ փոխանակեցեր զմարմինդ ընդ հոգւոյդ քում փրըկանս, եւ ոչ ածեր զմտաւ զսպառնալիսն Մաքսիմիանոսի Թագաւորին. այլ վերին ազդեցութեամբն՝ դիտելով զայրեցումն հոգւոց նոցա, վասն այնորիկ լուցեր զտաճար կռոց նոցա։ Արդ ի յաղթող պատերազմի տաւնաղացս զաւր նահատակութեան քոյ՝ բարեխաւսեա առ տէր վասն անձանց մերոց։*

*[Վարդանանց. Յաշխարհական ի ճակատամարտին, յաշխարհական ի ճակատամարտին, եւ ի մեծ պատերազմին ընդդիմամարտեալ լինէր աւրինացն պատերազմին. եւ զմոլութիւն անաւրինացն խափանեցէք. յաղթող գտայք ով սուրբ երանելիք. քանզի որոց աստուածային ստացեալ էր զաւրութիւն, ոչ ժուժկալէր նոցա մարմնաւորական պատերազմն. սոցա բարեխաւսութեամբ Քրիստոս խնայեա ի մեզ եւ ողորմեա։]*

— klno "զբարեպաշտ." — "զմոլութիւն" ունին Jklnop եւ sv, միւսներն (ուստի նաեւ a) "զմոլորութիւն". — gklnop "Թէոդորոս" (փխ. "Թէոդորոս.") — ամէնքը "նախանձուն վառեալ" (միայն Ja "նախանձու վառեալ." fk "վառեալ."), — ամէնքը (բացի Ja) "որք զսուրբ հոգին (nop "զսուրբ զհոգին") հայհոյէին", եւն. v "...վառեալ ընդդէմ այնոցիկ, որք զսուրբ" եւն։ — "Բայց դու" եւն խօսքէն սկսեալ l իբր նոր բաժին ունի "Է" (փոխ.) նշանակելով (= np)։ Անկէ սկսեալ v կերպարանափոխ եղած է՝ "Արդ ով աստուածարեալ եւ ուղղափառ սուրբ Թագաւոր՝ աղաչեա զՏէր ի փրկել զմեզ ի մարդասպան հայհոյութենէ. զի եւ մեք տօնեցուք զյիշատակս քո՝ խնդրելով ի Քրիստոսէ զհաշտութիւն եւ զմեծ զողորմութիւն"։ Ընդհակառակն s ձեռագրաց համեմատ է, միայն կ'ըսէ "...դլուխ, աղաչէ զՏէր փրկել" եւն։ — Միայն og "...հայհոյութենէն." — fhlnop եւ s "զքո գալուստ" (Jagik "...գալուստդ.") — fghiklnop եւ s "Թագաւորին։" ‖[375-80] Զօրականաց ժամամուտը չունին dj. իսկ kl "զաւրավարաց։" — fgklnop եւ s "քաջ նահատակ Քրիստոսի" եւն. — "Թէոդորոս" անունն ունին ձեռագրաց մեծ մասն (v ի փակագծի՝ բառ տօնի փոխուելու համար.) իսկ h "Սարգիս", k երկուքն ալ՝ ինչպէս նաեւ lo որ "Սարգիս" անունը վարը լուսանցքի վրայ աւելցուած ունին. — ln "ընդ հոգւոյ քում". i "ընդ ոգւոյդ քում". — knop "զՄաքսիմիանոսի." իսկ v փոխեր է "...զսպառնալիսն անօրէն բռնաւորացն. այլ վերին" եւն. — klnop "ազդեցութեամբ." — a "վասն այսորիկ" եւն. h յաւելուածով՝ "վասն այնորիկ խորտակեցեր ձեռամբ զկուռսն եւ լուցեր" եւն. — v "կռոցն" չունենալով "նոցա" դերանունը. — o "ի յաղթող է պատերազմին". fkn եւ s "ի յաղթող պատերազմին." — n "Տօնողացս" կը սկսի իբր նոր տուն՝ կցելով սկիզբը "Է։" ‖[381-86] "Վարդանանց ժամամուտս ալ այն երկրորդն է՝ զոր Բարսեղեան դուրս ձգած է։ Այս ալ ճիշդ այն օրինակներն ունին՝ զորոնք նշանակեցինք "Թագաւորաց" ժամամուտին համար. (տես տող 367.) չունի՝ cdj ձեռագրաց պէս՝ հոս նաեւ l։ — Հոս ալ a առինք առաջնորդ։ — Խորագիրն գրինք ըստ p. (a Վարդանայ, J Վարդանաց, k Վարդան, եւն։) — "Յաշխարհական ճակատամարտին" երկրորդ կրկնութիւնը չունին Jai. — g "ընդդիմամարտեալ լինէր անաւրինաց պատերազմն." (նաեւ fhiknop եւ sv "...լինէր պատերազմ" հոս եւ յետոյ "մարմնաւորական պատերազմ.") — "եւ զմոլութիւն" եւն խօսքը կը սկսի v այսպէս՝ "Իսկ երանելի նահատակքն զմոլութիւն" եւն. — g "զմոլութիւն նոցին" (փխ. "անաւրինացն.") — i (= s) "խափանեցէք." k "խափանեցեր." v՝ "խափանեցին." - fglıknop "է յաղթող գտայք" եւն. v անկէ սկսեալ տարբեր "խափանեցին եւ յաղթող գտան. քանզի որոց ստացեալ էր զաստուածային զաւրութիւն, ոչ ժուժկալեալ էր նոցա մարմնաւորական պատերազմ. Արդ Քրիստոս Աստուած սոցա բարեխօսութեամբն խնայեա ի մեզ եւ ողորմեա." — i "որոց զաստուածային ստացեալ" եւն. — fghinop եւ sv

Քառասուն մանկանց մարտիրոսաց: Գնալով փառաց քոց ի փառս կաթուղիկէ եկեղեցի, դիմեալք ի Սեբաստիա վերին. ուր թագաւորեալքն յԱստուծոյ նահատակին ի յամաւթ եւ ի քարընկէց յերեսս բանսարկուին. քաջալերելով զմիմեանս, զի մի՛ լուծեալ ոք բաղանեաւք անցաւորիս՝ պակասեսցի. այլ դողալով առաքինաբար զինքն ըղերձեալ, յանխուս աստուածային գանձուցն հոլովիցի՝ աղաղակելով առ Քրիստոս, ընկալ զորդէգրութիւն ժողովոյս մերոյ ի յոյս սիրողաց քոց. տէր փառք քեզ:

Ղազարու: ԶՂազարու զննջումն որպէս կանխագէտ յառաջ ասէիր զի եւ ի Բեթանիա յառաջէիր, զի յարուցես զսիրելին քո. եւ քեզ գոչելով ասեմք՝ աւրհնեալ որ գաս ի չարչարանս կամաւ Հաւր ի փրկութիւն անձանց մերոց: — Ղազարու: Յորժամ եկեալ կենարարն ի գերեզմանն Ղազարու՝ յորժամ եկեալ կենարարն ի գերեզմանն Ղազարու, աւետաւոր ձայնիւն աղաղակէր ասելով, Ղազարէ արի՛ եկ արտաքս: Իսկ մեռեալն ի գերեզմանէն յարեաւ, եւ նոյն ինքն զանմահութեան պարգեւսն ետ սիրելւոյն. եւ աստուածային ձայնիւն ի գերեզմանէն կոչեաց. վասն որոյ եւ մանկունք Եբրայեցւոց՝ ոստովք աւրհնէին զանմահ թագաւորութիւն քո. ովսաննա աւրհնեալ է գալուստ քո՛ աւրհնութիւն ի բարձունս, աւրհնեալ որ գալոցդ ես անուամբ տեառն:

---

"մարտիրոսական պատերազմ" (k մարտիրական պատերազմ, g եւ J մարտիրոսական պատերազմի.) — J "Նոցա բարեխօսութեամբ" եւն. — hv "բարեխօսութեամբն." — Jaf "ողորմեա մեզ:" ‖387–93 Քառասուն մանկանց կտորս չունին dj. — Խորագիրն՝ Jacgklno եւ s "Քառասնից:" (f "Քառ. մկց.:") — Տպագիրն v սկիզբը բոլորովին փոխեր է՝ "Գնալով փառաց քոց ի փառս կաթուղիկէ եկեղեցի քո Քրիստոս մեծապէս պայծառանայ. քանզի թագաւորեալքն ի Քէն դիմեալք ի յերկինս, ի Սեբաստիայ նահատակին՝ ի յամօթ եւ ի քարընկէց յերեսս բանսարկուին: Որք եւ քաջալերեէին զմիմեանս" եւն: — Ja "կաթուղիկէ եկեղեցոյ դիմեալք Սեբաստիա" եւն. — ci "վերին." — Jach "թագաւորեալքն Աստուծոյ" եւն. — Jacfghiklnop "ի յերեսս" եւն. — Ja չփոթ՝ "քաջալերելով մի զմի լուծեալ ոք" եւն. լաւ եւս hklnop "քաջալերելով մի զմի՝ զի մի լուծեալ ոք" եւն. — a "...բաղանեօք յանցաւորիս պակասեցէ" եւն. (g "...անցաւորիս պակասեցին.") — i "ընթեռնու ողջերջեալ." Ja "զինքն ընդերձեալ" եւն. — Jacfhik եւ sv "ի յանխուս" եւն. — Ja "հոլովիցէ" (փխ. "հոլովիցի" ըստ ամենուն, միայն՝ ik "հոլովիցեն," o՝ "հոլովեսցի.") — v "աղաղակելով առ Քրիստոս՝ Արդ ասա Յարեխօսութեամբն ընկալ" եւն. — Jacfghklnop "...ժողովոյս մեզ" (փխ. "մերոյ" ըստ isv եւն:) ‖394–97 Ղազարու մասս չունին dj. — Խորագիրն՝ J "Ղազարու յարութեան." — ih "ԶՂազարու ննջումն" եւն. — v "որ եւ (փխ. "զի եւ") ի Բեթանիա" եւն. (h "զի ի Բեթանիա" եւն.) — Jai "եւ մեք գոչելով" (փխ. "քեզ." նման՝ v՝ "Արդ եւ մեք գոչելով" եւն.) — s "օրհնեալ որ գայ" (փխ. "գաս" եւն:) ‖397–404 Ղազարու երկրորդս չունին djo. — Խորագիր չունի k (= s.) իսկ J "Ղազարու յարութեան," բայց clnp "Գերեզմանաց:" — Միայն՝ v "...եկեալ կենարարդ." — երկրորդ կրկնութիւնն ամբողջ կամ մաս մը չունին gklp, որոնցմէ k կը գրէ "...եկեալ ի գերեզմա. նոյն է." — v "աւետաւոր ձայնիւդ աղաղակէիր" եւն: — i "խօսոյն (փխ. "իսկ") մեռեալն" եւն. — Jafhikn եւ s "...յարեաւ. նոյն ինքն" եւն. (չունին "եւ".) v "եւ նոյն ինքնդ" եւն. — Ja "զանմահութեանց զպարգեւս (= ikln) ետ սիրելոյն (= hi.) իսկ՝ gfp "զանմահութեանցն զպարգեւս" եւն, h "զանմահութեանց զպարգեւսն." v "զանմահութեան զպարգեւսդ ետուր սիրելւոյդ." (n = այս., բայց՝ "սիրելւոցն.")

Ծաղկազարդին: Ցնծա Երուսաղէմ, եւ զարդարեա զառագաստ քո Սիոն. քանզի ահա Թագաւոր քո Քրիստոս նստեալ ի յաւանակի նորոյ հեզու-թիւն ցուցանելով եւ գայ մտանէ յառագաստ քո Սիոն, եւ մեք աղա-կեմք՝ ովսաննա աւրհնեալ եկեալ ի յանուն տեառն. որ ունի զմեծ զողոր-մութիւն:

Զատկին: Քրիստոս յարեաւ ի մեռելոց. մահուամբ զմահ կոխեաց, եւ յարութեամբ իւրով մեզ կեանս պարգեւեաց. նմա փառք յաւիտեանս. ամէն:

Ցինանցն: Ահաւոր եւ սքանչելի է խորհուրդ փրկութեան մերոյ. որ ան-սկիզբն ի Հաւրէ անճառաբար մարմնացաւ ի կուսէն, խաչի համբերելով, եւ կամաւոր մահուամբ իւրով զկենդանութեան մեզ պարգեւեաց շնորհս: — Ցինանցն: Քանզի յարեաւ ի մեռելոց Քրիստոս Աստուած յաւիտենից արարիչ, եւ յարութիւն ազգի մարդկան. զոր աւրհնեն անդադար զինուո-րութիւնք հրեշտակաց, եւ ամենայն զաւրութիւնք երկնից. ընդ որս գոչելով ասեմք. փառք սոսկալի յարութեան քո տէր:

Համբարձման. Հիացան վերնական բազմութիւնքն տեսանելով զքեզ ի հրեղէն կառս բազմեալ՝ սարսեալ ասէին, ով է սա՝ որ դիմեալ գայ յԵ-դովմայ, եւ եկեալ մտանէ փառաւք ի փառս. տէր փառք քեզ: — Համ-բարձման: Որ յանպատում յաթոռ նստիս՝ եւ յանմարմնոց վերաւրհնիս, անհասանելի Բանդ Աստուած, ի յերկրի երեւեցար ճշմարիտ մարդ. զտնաւ-

— v “աստուածային ձայնիւդ... կոչեցեր„ եւն. — Jafghip “Երրայեցւոցն.„ — a “զանմահ զԹագաւորութիւն քո„ եւն. (հոս կը կցէ v “Ընդ նոսին եւ մեք աղէմք. ովսաննա„ եւն.) — ghklnop “օրհնութիւն ի բարձունս Աստուծոյ, օր-հնեալ„ եւն. — fi “որ գալոց քո„ եւն: ||405—409 Ծաղկազարդի կտորս չունին dj: — Խորագիրն՝ J “Ծաղկազարդի.„ fknop “Գալ.„: — Ja “Ցնծա այսօր ցնծոյ Երուսաղէմ... Թագաւոր քո Քրիստոս նստեալ է վերոյ աւանակի որոյ հեզութիւն ցուցանելով„ եւն. (h “նստեալ յաւանակի նորոյ„ եւն.) — “եւ գայ„ եւն ունին ամէնն՝ բաց ի TWtv. — “Սիոն„ չունի v. (Jaf “Սիոն„ կը գրեն.) — Ja “եւ մեք գոչելով աղաղակեմք„ եւն. h “եւ մեք աղաչեմք„ եւն. — i “օրհնեալ եկեալն ի յանուն„ եւն. c “...եկեալ յանուն„ եւն: ||410—412 Խորագիրն՝ c “Սուրբ Զատկին.„ Jafhi “Յարութեան.„ k “Զատկի„: — Jafhklnop եւ sv “յարութեամբն իւրով„ եւն. — jc եւ v “մեզ զկեանս պարգեւեաց„ եւն: ||413—415 Ցինանց ժամամուտ չունի j: — Խորատագիրն՝ Jah “Յարութեան.„ dg “Ցինանց.„ i լոկ “Բ„ նշանակեր է: — J չունի “ան-ճառաբար„ (a ձեռագրի մէջ ալ յետոյ գրուած.) g “անճառապէս.„ — i “եւ խաչի համբերելով„ եւն. — acdfgklnop եւ sv “մահուամբն իւրով„ եւն. — dh “զկենդանութիւն մեզ„ եւն (փխ. “զկենդանութեան.„) — klop “պար-գեւեաց շնորհ„ (փխ. “շնորհս:„) ||416—419 Ցինանց երրորդս չունին dj. — Խորագիրը չունի c. Jah “Յարութեան.„ fknop “Է.„ i “Բ.„ g ալ “Ցինանց:„ — Միայն Ja “ընդ որս եւ մեք գոչելով„ եւն. (այլք ըստ այդ.) — “Տէր„ չունին kln: ||420—422 Միայն go “բազմութիւնք.„ — cghjklnop “ասէին էՊէ ով է„ եւն. — jc “յԵդովմայ.„ gi “յԵդոմայ.„ — acfgjklnop “եկեալ մտանէ„ եւն. (չունի “եւ„): ||422—432 Համբարձման երկրորդս չունին dj. — Խորատա-գիրն՝ a “Համբարձմանն.„ i պարզ “Բ.„ — a “Որ անպատում աթոռ (iv յանպատում աթոռ) նստիս եւ անմարմնոց„ եւն. (v “յանմարմնոցն վեր օրհնիս„ եւն.) — այսպէս “զանօրէնութեանն„ ունին gklnop եւ TVV² sv. (սխալմամբ h “զանօրէնութիւն„ եւն.) gi “...կատարեալ խորհուրդ„ եւն, իսկ c ամբողջն “զխորհուրդ անօրէնութեան կատարեալ, խաչի„ եւն. — k “համ-

րէնութեանն կատարեալ զխորհուրդ՝ խաչի եւ մահու համբերեցեր, եւ զհրաշալի զյարութիւնդ քո ցուցեր հզաւր զաւրութեամբ. այսաւր համբարձար փառաւք ի յերկինս, եւ զկուսածին զմարմինդ քո հրաշափառապէս լուսազարդեցեր. զոր տեսեալ Եսայիաս՝ նախաձայնեալ ասէր, ով է սա՝ որ դիմեալ գայ յերկրէ. հիացեալ պետութեանց երկնից՝ գոչէին առ միմեանս, համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, եւ մտցէ թագաւոր փառաց: Այլ որ յամենայնի կարաւղդ ես՝ եւ հզաւր, շնորհեա եւ մեզ հանդիպիլ քեզ ամպովք ի միւսանգամ քո գալստեանդ. որ միայնդ ես մարդասէր:

Հոգւոյ գալստեան: Աստուած զքեզ խոստովանիմք զսուրբ Հոգիդ՝ եւ երկիրպագանեմք. որ ես պատճառ կենդանութեան եղելոցս՝ եւ խաղաղարար աշխարհի. որ զգիտութիւն աշակերտացն բազում գիտութեամբ լցեր. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ անճառելեաւք ցուցար նոցա. աղաչեմք տէր, խնայեա եւ կեցո զմեզ: — Երկուշաբթի: Այսաւր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն լուսաւորելով զնոսա. եւ այժմ աղաչեմք զքեզ սուրբ Աստուած՝ որ ես պատճառ կենդանութեան եղելոցս եւ խաղաղարար աշխարհի, խնայեա եւ կեցո զմեզ: — Երեքշաբթի: Վասն որոյ եւ մեք զՀոգին սուրբ ընդ Հաւր միաւորեալ, եւ ընդ Որդւոյ միաւնական խոստովանիմք. եւ հայցեմք ի վերնատունեղէդ մեզ զհոգեւորական զխաղաղութիւնդ տէր փառք քեզ:

Հռիփսիմեանց: Որք ծագեցան մեզ յարեւմտից որպէս զարեգակն. եւ լուսաւորեցին համանգամայն զաշխարհս Հայաստանեայց, փարատեցին

բերելով” (փխ. “համբերեցեր.”) — Jahi “եւ զհրաշալի յարութիւնդ” են. — c “...փառօք յերկինս” են. — J “կուսածին զմարմինդ.” a “կուսածին մարմինդ.” iv “զկուսածին մարմինդ” են: — “Հիացեալ” բառէն սկսեալ շատ ձեռագիրք նոր բաժանում կը սկսին, J նաեւ “Համբարձման” խորագիր դնելով (տես a). f “Ճ” (փոխ), i “Գ” նշանակելով, միւսները իբր նոր մաս սկսելով (համմ. Jafhi.) իսկ c “Հիացեալ+” կ'ըսէ. — J “գոչելով” (փխ. “գոչէին”) առ միմեանս” են. — v “Արդ (փխ. “այլ”) որ յամենայնի” են. — J “որ ամենայնի կարող ես” են. — io “շնորհեա մեզ” են (չկայ “եւ”.) — J “յամպովք.” agk “ամպաւք.” cfio “ամպօք”. — Ja “...քո գալստեան” են, klp “քո գալստեանն” են: ‖[434—438] Հոգեգալստեան կտորս չունի j. — խորագիրն՝ l միայն “Հոգւոյ.” (ci “Ոգւոյ.”) gop “Սուրբ Հոգւոյն.” Ja “Գալուստ:” — Ja “սուրբ Հոգիդ”. gklnop “զսուրբ զՀոգիդ” (= ci, որ “զՈգիդ” կ'ըսեն.) — 22. կը բաժնեն “երկիր պագանեմք” (բայց klnop “երկրպագեմք”). — Ja “պատճառ կենդանութեանց.” — kl “եղելոց” (փխ. “եղելոցս.”) — d “խաղաղարար յաշխարհի.” — i “աշակերտաց”. — Jacfghiklnop “գիտութեամբ լեզուացն” (փխ. “լցեր”, զոր ունին տպագիրք՝ նաեւ sv.) — Ja “որ ի հրեղէն լեզուս բաժանեալ, հանգեար յառաքելոցն ի-անճառելեօք” են: ‖[438—441] Երկուշաբաթի կտորս ունին միայն hj (չունին Jacdfgiklnop) եւ տպագիրքն, նաեւ sv: Խորագիրն ունի h՝ “Հգ. գլ.:” — h “աղաչեմք զքեզ Տէր Աստուած (փխ. “սուրբ Աստուած.”) j “սուրբ Հոգի” (փխ. “Աստուած.”) v երկուքն ալ “սուրբ Հոգիդ Աստուած”, իսկ s բառ առ. — v “...կենդանութեան եղելոց” են: ‖[441—444] Երեքշաբաթի մասս ունի միայն h (միւս ամէն 22. չունին) եւ տպագիրքն. h “Հգ. գլ.:” — h “...միաւնական խոստովանիմք ձի Երրորդութեան. եւ հայցեմք” են. — v “Հայցեմք մեզ ի վերնատունեղէդ զհոգեւորական խաղաղութիւնդ” են. (s = տպ.:)

*զխաւարն անգիտութեան կռապաշտութեան. եւ լուսաւորեցին զամենայն Հոգի Հաւատով աստուածգիտութեան. սոցա բարեխաւսութեամբն Քրիստոս Աստուած, պարգեւեա աշխարհի քում զխաղաղութիւն. եւ անձանց մերոց զմեղաց զթողութիւն որպէս մարդասէր տէր: — Գայիանեանց: Զյաղթական զձեր զհանդէս զուարճացեալ տանէ եկեղեցի սուրբ. քանզի սրբութեամբ ստացայք զկուսութիւն. եւ ի մարմնի զանմարմնոցն ցուցէք զհանդէս: — Կուսանաց: Հարսնացեալք Քրիստոսի երկնաւոր փեսային, դստերք վերին Սիովնի. խնդրեցէք ի Քրիստոսէ զհաշտութիւն եւ զմեծ զողորմութիւն:*

*Յովհաննու Մկրտչին: Զյառաջընթացութիւն քո եւ զկարապետութիւն Աստուծոյ Բանին խափանել կարծելով, որ ի ձեռն կնոջն զնախաստեղծն ի դրախտէն արտաքս ընկէց, նաեւ այժմ զՀերովդիադայ անաւրէնութեամբ բորբոքեալ, եւ բազմելոցն Հերովդիայ՝ զկաքաւս ոտից աղջկանն հաճոյացոյց, զի զքոյդ հատցէ զգլուխ, որ զամենեցուն ձեռնադրեցեր զգլուխն զՔրիստոս: Այլ դու, որ յանապատէ բարբառոյ ձայն, գոչեա որում ձեռնադրեցեր՝ պարգեւել զխաղաղութիւն եւ զմեծ զողորմութիւն:*

*Մարգարէից: Տէր որ հիմնեցուցեր զեկեղեցի քո ի վերայ վիմին հաւատոյ, եւ կարգեցեր ի սմա առաքեալս՝ եւ մարգարէս, հովիւս եւ վարդապետս առ ի հաստատութիւն սրբոց. եւ ճգնութեամբ վկայից զթշնամին սորա վանեցեր. ի խաղաղութեան զսա պահեա Աստուած որպէս մարդասէր:*

‖445—450 Հռիփսիմեանցը չունի միայն j. — Ja “որպէս արեգակն„ են: — Jahk “եւ լուսաւորեցին համանգամայն ողջոյն աշխարհն: (h միայն “աշխարհս„) Հայաստանեաց„ են. միւսներն բնագրին պէս. — Ja “կռապաշտութեանց„ են. — h “զամենայն Հոգին աստուածգիտութեան„ (չունի “հաւատով.„) d “...Հոգի հաւատով յաստուածգիտութեան„ են. — Jagklno “բարեխօսութեամբ„ են. — a “պարգեւեա յաշխարհի քում„ են. — J “մեղաց զթողութիւն„ են. a “մեղաց թողութիւն„, dfghin եւ sv “զմեղաց թողութիւն.„ — վերջը “Տէր„ չունին hglnp. ‖450—453 Գայիանեանցս ալ չունին dj: — Խորագիրն J “Կուսանաց.„ n “Կուսանա. Գայի.:„ — Սկիզբը v՝ “զյաղթական զձեր զհանդէս„ են. J “զյաղթական զձեր հանդէս„ են. — Ja “սրբութեամբ յերկնոյ ստացայք„ են. — f “ստանայք.„ h “ստացաք.„ — Jafghklnop լաւ եւս “ցուցէք„ (փխ. “ցուցիք:„) ‖453—455 “Կուսանաց„ խորագիրը չունի k, իսկ ln “ն:„ — aklop “Հարսնացեալ Քրիստոսի„ են. cj “Սիոնի.„ — ghknop “եւ զմեծ նորա զողորմութիւն„: ‖456—462 Մկրտչին ժամամուտս չունին dj. — Խորագիրն՝ Jgknop միայն “Յովհաննու:„ — c “Աստուած Բանին„ են. — Ja “...խափանել կարծելով (փխ. “խափանել„) ...նաեւ այժմ մեզ զՀռօդիադայ„ են. (նաեւ cv “զՀռօդիադայ.„ h “զՀռոյդիադա.„ fgklnop “զՀռաւդիադա.„ is “զՀերօդիադայ..) — J “բազմեցեալ Հերովդիա.„ fg “բազմեցելոցն Հերովդիա.„ ko “բազմելոցն Հերաւդիա.„ lnp “բազմելոցն Հերովդի.„ sv “բազմելոյն Հերօդիայ.„ — (c “Հերօդիայ„, n “Հերովդիա.„ են.) — n “զքոյդ հատցէ զգլուխդ„ են. — f չունի “որ զամենեցուն... զՔրիստոս„ խօսքը. J սխալմամբ “որ զամենայն ցան ձեռնադրեցեր„ (փխ. “զամենեցուն.„) c “որ զամենեցուն զգլուխն Քրիստոս ձեռնադրեցեր.„ s “որ զամենեցուն զգլուխն ձեռնադրեցեր զՔրիստոս.„ նաեւ Jacgik եւ v կ'ընթեռնուն “Քրիստոս„ (փխ. “զՔրիստոս„): ‖463—466 Ամէն 22. (Jacdfhijklnop) եւ sv “ի վերայ վէմ (fs “վիմին) հաւատոյ.„ Բարսեղեանի սրբագրութիւնն “...վիմին հաւատոյ„ ունին TVV$^{2}$W եւ t. — J սխալմամբ “եւ ճգնութեան վկայիցն (նաեւ h “վկայիցն„) զթշնամին„ են. — ah “ի խաղաղութեան զսա պահեա„ են. — i չունի “Ա-

— Առաքելոց։ Առաքեալք եւ վկայք Քրիստոսի Աստուծոյ ամենակալ Հոգւոյն զաւրութեամբ զամենեսեան ընդհանուր յորդէգրութիւն կենաց կոչելով՝ միասնական սուրբ Երրորդութեանն յորդորեցին երգել փառս ի յաւիտեանս. ամէն։ — Հայրապետաց։ Զհայրապետականն զարդարեցեր զաթոռ ի յերկրի. առաքելական առեր զպատիւ յերկնուստ՝ ծառայ Քրիստոսի ով երանելիդ ի հարս սուրբ հայրապետ. քանզի քոյ վարդապետութեանդ սերմանք՝ բարեպաշտութեան բուսուցին հասկս, ուրախութեան պտուղ հատուցանելով, եւ հաւատացելոցս զփրկութիւն շնորհելով. վասն որոյ բարեխաւսեա առ տէր վասն անձանց մերոց։

Եկեղեցւոյ։ Զխաղաղութիւն շնորհեա եկեղեցւոյ քում սրբոյ. զխաղաղութիւն եւ զանշարժութիւն ի թշնամեաց պատերազմէ. եւ հաստատեա ի մի հաւատ զկաթուղիկէ եկեղեցի. զքեզ խոստովանիմք տէր եւ Աստուած՝ կեցո զմեզ։ — Վարդավառին։ Երեւի տէր պայծառ աշակերտացն ի Թաբաւրական լերինն. եւ աշակերտացն զարհուրեալ աղաղակէին ասելով, արասցուք երիս տաղաւարս. մի տեառն, եւ մի Մովսեսի, եւ մի Եղիայի։ Եւ մեք բանաւոր հաւտքս երգեմք ընդ քո ճշմարիտ վկայիցդ. առաքեա ի մեզ զլոյս քո շնորհացդ ի քո միւսանգամ գալստեանդ եւ կեցո։ — Խաչի։ Առաջի պատուական ամենայաղթ խաչի քո անկանիմք երկրպագելով եւ

---

տուած„ բառը, իսկ aghop “Աստուած մեր որպէս„ ունին։ ‖[467—470] Միայն ci “Որդւոյն.„ — fghklnop եւ sv “Հոգւոյն զօրութեամբն„ ունին. — h “յորդեգրութիւն... կոչելով„ ունի. — cdfhiklnop “միասնական երրորդութեանն„ (չունին “սուրբ.„) — Ja “Երրորդութեան„ (= j.) — i “երգել յորդորեցին.„ ll “որդորեցին երգել„ ունի. — g “...զփառս յաւիտեանս. ամէն։„ ‖[470—475] Միայն c “Հայրապետաց եւ վարդապետաց։„ — Միայն d “զարդարեցէր„ (փխ. “զարդարեցեր)... առաքելական առէր զպատիւ... ծառայ Քրիստոսի, որ երանելիդ ի հարս սուրբ հայրապետ, քանզի ցեր վարդապետութեանդ ...վասն որոյ Տեառն բարեխօսեցէք վասն„ ունի. — Jafghijklop եւ sv “զհայրապետականն... աթոռ„ ունին. — j “...աթոռ յերկրի„. c “...զաթոռ յերկնի.„ — h “զառաքելական առեր„ ունի. J “առաքելական պատիւ առեր„ ունի. — ah “ի յերկնուստ„ ունին. — Ja “ով երանեալդ ի հայր սուրբ„ ունին. ghijklnop “ով երանեալդ ի հարս„ (= d) ունին. — id եւ V “քանզի ցեր„ (= d.) — Jafn “...վարդապետութեանցդ սերմանք.„ sv “վարդապետութեանդ սերմանք.„ — gh “բարեպաշտութեանն բուսուցին„ ունին. c “բարեպաշտութեան ......ցին„ սխալ. — Jadfgho “հասկ„ (փխ. “հասկս.„) — g “պտուղ հատուցանելով„ (այլեւ “հատուցանելով.) — kl “եւ հաւատացելոց.„ (i “եւ հաւատացել.„) — v “փրկութիւն շնորհելով.„ — Jadfghjklnop “վասն որոյ Տեառն բարեխօսեա (d տես վերն) վասն անձանց մերոց.„ cisv եւ այլ տպագիրք “վասն որոյ բարեխաւսեա առ Տէր„ ունին։ ‖[476—479] Եկեղեցւոյ ժամամուտ չունին dj. — Ja “եկեղեցոյ քում„ ունին. — k “...պատերազմէն„. — cgh եւ s “ի մի հաւատ„ ունին. (այլեւ “հաւատ։„) ‖[479—484] Վարդավառի կցորդս չունի d։ — Միայն v “Երեւի տէրդ„ ունի. — “Թաբաւրական„ lnop, մինչ g “Թափաւրական.„ k “Թաբովրական,„ chij եւ s “Թափօրական„, Wtv “Թաբօրական.„ իսկ J՝ “Թափաւր,„ a “Թաբօր.„ — gh եւ sv “աշակերտացն (v աշակերտացդ) զարհուրեալ„ ունին. — klnop “երիս խորանս„ (փխ. “տաղաւարս„ բստ այլոց.) — h “մին Տեառն„ ունի, a “մի Տեառնդ„ ունի. — v “Արդ եւ մեք բանաւոր„ ունի. — Jafghklnop եւ s “հօտս„. (v “հօտս„ բստ այլոց.) — Jaghklop “վկայիցն„ (փխ. “վկայիցդ„ ունի.) — i “զլոյս քոյ շնորհացդ.„ Jah “զլոյս քո շնորհացն„ ունին. — klnp եւ s “ի քո միւսանգամ

փրկութեան։ Որ արժանի արարեր զմեզ զնուաստացեալ եւ զանարժան ծառայքս քո ի ժամուս յայսմիկ կալ առաջի փառաց սրբութեան սեղանոյ քո, եւ զաւրինաւոր երկրպագութիւն եւ զփառաբանութիւն մատուցանել քեզ։ Դու տէր ընկալ ի բերանոյ մեղաւորացս զերեքսրբեան աւրհնութիւնս, եւ պահեա զմեզ քոյին քաղցրութեամբդ։ Թող մեզ զամենայն յանցանս մեր զկամայ եւ զակամայ։ Սրբեա զհոգի, զմիտս եւ զմարմինս մեր, եւ շնորհեա ի սրբութեան պաշտել զքեզ զամենայն աւուրս կենաց մերոց բարեխաւսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին եւ ամենայն սրբոց քոց, որք յաւիտենից քեզ բարեհաճոյեցան։ Զի սուրբ ես Աստուած մեր, եւ քեզ վայել է փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

### ՔԱՐՈԶ ՀԱՄԱՇԽԱՐՀԱԿԱՆ

ԺԱ. — Եւ սարկաւագն քարոզեսցէ. Եւս եւս խաղաղութեան զտէր աղաչեսցուք։ — Դպ. Տէր ողորմեա։ — Սրկ. Վասն խաղաղութեան ամենայն

թիւն„ (= OPQS.) իսկ ՏՍ. "զզգօնութիւն„։ ‖566 N թերթի այսպէս՝ "Եւ ոչ անտեսս արարեր զնուաստացեալ եւ զանարժան„ եւն (տես տող 567.) ուստի տող մի ("զմեղուցեալսն„ եւն) դուրս ինկած։ — HK "զմեղուցեալ-ն։„ — FGK "եդէր„ (փխ. "եդեր„ բստ այլոց։) — Բոլոր ՀՀ "ապաշխարութիւն (H ապաշխարութիւնն) փրկութեան„ (= OQS), իսկ P եւ ՏՍ "զապաշխարութիւն փրկութեան„ եւն։ FN² "ապաշխարութիւն ժառանգելեան„ (փխ. "փրկութեան„)։ ‖568 EHN² "...զանարժան ծառայս քո„ (= PQS.) այլք "...ծառայքս...։„ — F "յայսմ ժամու„ (փխ. "ի ժամուս յայսմիկ.„) N² "այսմ ժամուս կեալ„. (J ալ "կեալ„ փխ. "կալ։„) — E "սրբութեանն ...եւ զաւրինաւոր երկրպագութիւնն եւ զփառաբանութիւնն„ եւն։ ‖569 FN² "զաւրինաւոր պաշտաւն„ (փխ. "երկրպագութիւն„)։ — J "...մատուցանելով քեզ„ (փխ. "մատուցանել„ եւն։) ‖570 C չունի "ընկալ„, ուստի՝ "Դու Տէր ի բերանոյ մեղաւորացս„ եւն։ ‖572 J "Սրբեա զհոգի, զմարմինս մեր„ (չունի "զմիտս եւ„։) FN² "Սրբեա զմիտս մեր եւ զհոգի, եւ շնորհեա սրբութեամբ„ եւն։ ‖573 J (= FN²) "սրբութեամբ պաշտել„ եւն, C "ի սրբութեան պաշտել„ եւն։ ‖574 FN² "...ոքն Աստուածածնիւ„ (փխ. սրբուհւոյ Աստուածածնին„ եւն)։ — "Սրբոց. բառէն ետքը թերթ է A մինչեւ տող 602՝ թուղթ ինկած ըլլալով (Թղ. 78էն ետքը)։ ‖575 J "բարի հաճոյացան.„ F լոկ "հաճոյացան„ (փխ. "բարեհաճոյացան„)։

ԺԱ. Համաշխարհական քարոզը ունին ՋԽ (22. Խորհրդատետր) եւ ՋԿ (կամ 22. Դպրութեան) ի մասնաւորի՝ I²bceij, եւ այն՝ e հոս կը սկսի ընդհանրապէս, իսկ d ունի (Թղ. 133բ) բայց միայն առանց սկզբնաւորութիւնք. միւսները չունին։ Տպագիրներէն ունին Դպրութիւնք (RV²tv), իսկ s (էջ 109 եւն) եւ s²⁻⁴ հոս եւ Հաւատամքէն ետքն եղող Խաղաղականաց միայն սկզբնաւորը։ Ձեռագիրներէն A թերթ է հոս. J չունի՝ այսպէս համառօտելով (առանց) խորագրի "Սրկ. Եւ եւս խղ.։ Ի ծածուկ ասէ քհ. զաղօթս. Տէր Աստուած մեր զրագկատարած„ (տող 599)։ Տպագիր Խորհրդատետրներն ալ չունին ամբողջը, այլ սկիզբը միայն կը նշանակեն՝ "Եւ (PQ ի կատարել երեքսրբենոյն եւ աղօթիցն) սարկաւագն քարոզեսցէ (PQ քարոզէ). Ե- Եւս խղ. զՏէր աղ.։ Վասն խղ. ամենայն աշխարհի։ Սրկն. ձայնեսցէ. Օրհնեա Տէր (PQ չունին վերջինս հոս, այլ յետոյ). Եւ քհն. բազկատարած ասասցէ ի ծածուկ զաղօթս„ եւն. (տես տող 599։) X չունի առանք ալ։ ‖579 I² այսպէս կը սկսի՝

*աշխարհի եւ հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ, զՏէր աղաչեսցուք: — Դպ. Տէր ողորմեա: — Սրկ. Վասն ամենայն սուրբ եւ ուղղափառ եպիսկոպոսաց, զՏէր աղաչեսցուք: — Դպ. Տէր ողորմեա: — Սրկ. Վասն հայրապետին մերոյ այս անուն կենաց եւ փրկութեան հոգւոյ նորին զՏէր աղաչեսցուք: — Դպ. Տէր ողորմեա: — Սրկ. Վասն վարդապետաց, քահանայից, սարկաւագաց, դպրաց, եւ ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ, զՏէր աղաչեսցուք: — Դպ. Տէր ողորմեա: — Սրկ. Վասն բարեպաշտ թագաւորաց եւ աստուածասէր իշխանաց, զաւրավարաց եւ զաւրաց նոցին, զՏէր աղաչեսցուք: — Դպ. Տէր ողորմեա: — Սրկ. Վասն հոգւոցն հանգուցելոց, որք ճշմարիտ եւ ուղիղ հաւատով ի Քրիստոս ննջեցին, զՏէր աղաչեսցուք: — Դպ. Յիշեա Տէր եւ ողորմեա: — Սրկ. Եւ եւս վասն միաբանութեան ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ, զՏէր աղաչեսցուք: — Դպ. Տէր*

---

“Պատարագէ՛ք տարցուք մտանամքս: Ասէ Սրկ. Եւ եւս խաղ.” ել: CEIMN “Եւ սրկն. քարոզէ. Եւ եւս եւս.” HGK “Եւ զկնի Սուրբ Աստուածին եւ աղաւթից Սրկն. քարոզէ ձայնիւ բարձր. Եւ եւս” ել: Նոյնպէս D “Եւ ի կատարումն Սուրբ Աստուածին սրգ. քարոզէ բարձր ձայնիւ. Եւ եւս” ել: F “Եւ ի կատարման Սուրբ Աստուածին եւ աղաւթիցն քարոզէ սրկն. բարձր. Եւ եւս” ել. N[2] “Սրկն. ասէ զքարոզս բարձր եւ դպիրքն ասեն Տէր ողորմեա: Եւ եւս” ել: Ձեռագիրք առհասարակ ամէն անգամ չեն կրկներ Դպրաց “Տէր ողորմեա” պատասխանն՝ ծանօթ ըլլալով, (be միշտ կը դնեն.) եւ առհասարակ վերջինքն կը համառօտեն: ‖580 Դպրաց պատասխանն՝ I[2] “Տէր ողորմեա կեցո.” DF եւ e ալ միայն “Կեցոյ Տէր:” ‖581 Այս “Տէր ողորմեա” ունին նաեւ FGI[2]: ‖583 Հոս հայրապետի յիշատակութենէն յառաջ դրած է R[2] (եւ անկէ ՏԱ խումբն՝ t) երկար խրատագիրը թէ “Աստ յետ յիշելոյն զպապն յիշեցի եւս առաջնորդն տեղւոյն” ել. (տես վերն էջ 608): ‖583–584 “Վասն հայրապետին մերոյ” ել ունին ՉՉ. եւ ՏԲ խումբն. եւ այն DFI[2]KN եւ c այսպէս՝ “Վասն հայրապետին մերոյ տեառն կենաց եւ փրկութեան (F փրկութեան անձանց) զՏէր” ել. իսկ CEGHMN եւ bci ու v՝ “վասն հայրապետին մերոյ տեառն այս անուն (b ասոր տեղ “Յովսէփայ”, c չունի “այս անուն.”) կենաց եւ փրկութեան հոգւոյ նորին (MC չունին “հոգւոյ նորին”) զՏէր աղաչ.:” ՏԱ (R[2] եւ անկէ V[2]t ել.) այս տունը փոխած է՝ “Վասն սրբազան Պապին մերոյ տեառն Ա. եւ Պատրիարքին կամ Արքեպիսկոպոսին կամ Եպիսկոպոսին մերոյ Տեառն Ա. զՏէր աղաչ.:” Այս խմբին համաձայն է 1698ին Լեհաստան գրուած j ձեռագիրն՝ “վասն սրբազան պապին մերոյ Տեառն (այս անուն) կենաց եւ փրկութեան հոգւոյ նորին զՏէր աղաչեսցուք: Վասն յամենայնատիւ արհիեպիսկոպոսին մեր Տեառն (այս անուն) կենաց եւ փրկութեան հոգւոյ նորին զՏէր:” ‖585–587 D այսպէս՝ “վասն քահանայից (չունի “վարդապետաց”), սարկաւագաց... մանկանց սրբոյ եկեղեցւոյ զՏէր” ել: Միւսներն բառ առ. (H “...մանկանցն եկեղեցւոյ” ել.) միայն d չունի այս տունը: ‖587–88 D ալ հոս համեմատ տպուածին. (D “...աստուածասէր իշխանացն” ել.) միայն ij “վասն բարեպաշտ Թագաւորին մերոյ այս անուն կենաց (i “...մերոյ Ա.” եւ չունի “կենաց”) եւ աստուածասէր իշխանաց” ել: ‖589 I[2]M “վասն հոգւոց հանգուցելոց” ել: ‖591 Այսպէս ՏԱ. քիչ տարբեր միւսները (be “Եւ եւս միաբան վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ զՏէր աղաչեսցուք.” նոյնպէս՝ FI[2]N[2] եւ dv ել:) Ասկէ եւ նաեւ նախընթացէն սկսեալ ՉՉ. (Խորհրդատետրները) կը համառօտեն, օրինակի համար C այսպէս՝ “վասն հոգւոց: Եւ եւս միաբ.: Զանձինս: Ողորմ.”: Նոյնպէս կամ նման միւս ՉՉ.: ‖592–593 Հոս ալ

ողորմեա։ — Սրկ. Զանձինս մեր եւ զմիմեանս տեառն Աստուծոյ ամենակալի յանձն արասցուք։ — Դպ. Քեզ տեառնդ յանձն եղիցուք։ — Սրկ. Ողորմեաց մեզ տէր Աստուած մեր, ըստ մեծի ողորմութեան քում։ Ասասցուք ամենքեան միաբանութեամբ։ — Դպ. Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

## ԱՂԱՒԹՔ ԲԱԶԿԱՏԱՐԱԾ

Ու քահանայն բազկատարած ասէ ի ծածուկ զաղաւթս. Տէր Աստուած մեր, զբազկատարած զաղաչանս ծառայից քոց վերընկալցիս եւ ողորմեսցիս ըստ մեծի ողորմութեան քում։ Զգթութիւն քո առաքեա ի վերայ մեր, եւ ամենայն ժողովրդեանս՝ որք ակն ունին առ ի քէն ողորմութեանդ։

Սրկ. ձայնեսցէ. Աւրհնեա տէր։ — ՔՀՆ. ի ձայն. Զի ողորմած եւ մարդասէր ես Աստուած գոլով. եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

---

$I^{2}$ «Տէր ողորմեա կեցո։» — $I^{2}$ «...Տեառն Աստուծոյ յանձն արասցուք» (չունի «ամենակալի.») իսկ be «Տեառն Աստուծոյ ամենակալին» ունին։ ‖594 Միայն e «Քեզ տեառն յանձն» ունի. ($I^{2}$bv ունին «տեառնդ» ունին։) ‖595 $I^{2}$ եւ e չունին «ըստ մեծի ողորմութեան քում» բառերն, ունին bv ունին։ ‖596 GK մէկ անգամ «Տէր ողորմեա.» ($I^{2}$be ունին երեք անգամ։) ‖597 Դպրութիւնք հոս կը կցեն «Սրկ. Օրհնեա Տէր.» այսպէս bevt ունին. (տես առղ 603.) վասն զի աստնք ի հարկէ միջանկեալ «Տէր Աստուած մեր զբազկատարած» աղօթքը չեն գրեր։ Բայց նաեւ ձեռագիր եւ տպագիր խորհրդատետրները հոս նոյն աղօթքէն յառաջ ունին. այսպէս ORSUVTW «Սրկն. ձայնեսցէ. Օրհնեա Տէր.» CEGHIKM «Սրգն. ձայնէ. (HGK եւ $I^{2}$ ԱՓՆ.) Օրհնեա Տէր։» J չունի այս ալ միւսներուն հետ։ $DN^{2}$ եւ N ալ չունին, F յետոյ մեր դրած տեղը (= PQ)։ ‖599 Խորագիր այսպէս ՏՊ. (եւ PQ «զաղօթս ի ծածուկ.» X լոկ «բազկատարած.») 22 (CM ունի) «Եւ քհն. բազկատարած ասէ ի ծածուկ զաղաւթս.» բայց C չունի «ասէ», HGK «ասէ զաղօթս» (չունին «ի ծածուկ.») N «ասէ ի ծածուկ» (չունի «զաղօթս».) J «ի ծածուկ ասէ քհ. զաղաւթս.» D՝ «Քհն. բազկատարած ասէ զաղաւթս» եւ F «իսկ նորա յորժամ զՏէր ողորմեան ասեն՝ քհն. բազկատարած ասէ զաղաւթս,» որուն համեմատ $N^{2}$ «իսկ յորժամ դպիրքն զՏէր ողորմեան ասեն, քհ. ասէ բազկատարած զաղ.։» ‖600 P «վեր ընկալցիս» ունի։ ‖601 E «զգթութիւն քո» ունի։ — $N^{2}$ «առաքեա ի վերայ ÷ մեր» ունի։ ‖602 «Որք ակն ունին» ունի տեղէն կը սկսի դարձեալ A՝ թղ. 74ա։ — H «առատ ողորմութեան» ունի։ ‖603 Հոս PQ եւ $V^{2}$ «Սրկն. ձայնեսցէ (V լոկ «Սրկն.»). Օրհնեա Տէր։ Եւ քհն. ասասցէ ի ձայն.» ունին։ Նոյնպէս F «Սրկն. Աւրհնեա Տէր։ Եւ քհն. ի ձայն» ունի։ Միւսները «Օրհնեա Տէր» վերն ունին, տես առղ 597։ — $V^{2}$ «Քհն. ի ձայն.» միւս ՏՊ (բաց ի PQ) պարզ «ի ձայն» (= 22.) $N^{2}$ «ձայն ասէ.» իսկ X «Ձեռնամած ի ձայն։» ‖604 F չունի «գոլով։» ‖605 J վերջը՝ «...յաւիտենից։ Դպ. Ամէն։»

ԺԲ. Այս ամբողջ հատածը շատ պէսպիսութեամբ ունին 22։ Նախ J ամենեւին չունի, բայց ի սա խօսքէն՝ «Եւ կարդան զաւուր գիրքն եւ զաւետարանն եւ ապա հաւատամքն. Հաւատամք» ունի։ Տարբեր են D եւ F (տես վերն՝ էջ 576, § 9.) վերջինս կարգէն է $N^{2}$՝ «Եւ ասեն Սաղմոս ըստ պատշաճի աւուրն ի ձայն, եւ երկրպագէ քհն. երիցս առաջի սրբոյ սեղանոյն, եւ գնացեալ նստի յաթոռն մինչեւ ընթեռնուն զՄարգարէն եւ զԱռաքելականն ըստ խորհրդական աւուրն։ Եւ դնի ասեն Ալէլու ի ձայն. եւ քհն. յառնէ յաթո-

## Ը Ն Թ Ե Ր Ց Ո Ւ Ա Ծ Ք

ԺԻՒ. — *Եւ քահանայն նստցի յաստիճանն: Եւ սկսցին սաղմոս. Կցորդ, ըստ խորհրդոյ աւուրն: Եւ ընթերցցին զգիրս մարգարէականս եւ առաքելականս: Եւ զկնի Ալէլու ըստ ցուցանելոյ ընթերցուածոյն:*

*Եւ յաւարտմանն՝ սարկաւագն բարձր ձայնիւ գոչեսցէ.* Օրթի: — *Քահանայն դարձցի ի խորանէն, եւ խաչակնքեսցէ ի վերայ ժողովրդեան, եւ ասասցէ.* Խաղաղութիւն † ընդ ամենեսեան: — *Դպ.* Եւ ընդ հոգւոյդ քում: — *Սրկ.* Երկիւղածութեամբ լուարուք: — *Սրկ.* Սրբոյ աւետարանիս ըստ Մատթէոսի: — *Դպ.* Փառք քեզ տէր Աստուած մեր: — *Սրկ.* Պրոսխումէ: — *Դպ.* Ասէ Աստուած [*կամ* ալթեաւս]:

---

ույն եւ զա առաջի սեղանոյն: Եւ սրգն. առեալ հրամանն կարգայ զաւետարանն ըստ պատշաճին: Եւ սկսանին վերջ աւետարանին՝ զոր ասեն ժողովն հաստատեցին ի Նիկիոյ ԳՃ ու ԺԸ հայրապետաց զբանն հաւատոյ. Հաւատամք, եւն: Միւսներն ընդհանրապէս համեմատ տպուածին, բայց դարձեալ շատ պէսպիսութեամբ: ||607 Բոլոր 22. (այսինքն ACEGHIKMN) "Եւ քհն. նստի յաստիճանն եւ սկսանին Սաղմոս Կց. (CH չունին "Կց.") ըստ խորհրդեան (CEH "խորհրդի") աւուրն:" Ցպագիրներէն մեր դրածին պէս ORSUVV²W (բայց OS "...սկսանիցեն" փխ. "սկսցին" եւ չունին "Կց.") միայն՝ PQ "Ցետ այսորիկ երկրպագեսցէ սեղանոյն քհն. եւ եկեալ բազմի յաստիճանն. եւ սկսանին դպիրքն սաղմոս ըստ խորհրդոյ աւուրն:" — Այս Սաղմոսք ու յաջորդ Ալէլուք տես ի v (էջ 106—140), t (12° էջ 41—93) եւ այլուր, այսպէս արեւելք տպուած ժամագրոց ճաշու մասին մէջ, եւ բուն ճաշոցները ինչպէս R² ալ նշանակած է՝ "Գիրքն, Ալէլուն եւ Աւետարանն ի Ճաշոցն գիտ.:" ||608—609 ACEIN "Եւ ընթեռնուն գիրս (CN զգիրս) մարգարէական եւ առաքելական: Եւ զկնի Ալէլու ըստ (C չունի "ըստ") ցուցանելոյ ընթերցուածոյն:" N չունի վերջինս "Եւ զկնի" եւն: — GK "Եւ ընթեռնուն գիրք մարգարէականք եւ առաքելականք (K "...զգիրքն մարգարէական եւ առաքելական) եւ զկնի Ալէլուիա (K Ալէլու) ըստ ցուցանելոյ գրոցն" (K "գրոց":) — Իսկ H "Եւ ընթեռնուն զգիրս մարգարէից եւ առաքելական. եւ զկնի Ալէլու ըստ ցուցանելոյ աւուր ընթերցուածին:" — Ցպագիրք մեր դրածին պէս. միայն O "...զգիրս մարգարէական եւ առաքելական." PQ "...զգիրս մարգարէականս եւ զառաքելականս ...Ալէլուիայ" եւն: Իսկ S "...ըստ ցուցելոյ" (փխ. "ցուցանելոյ:") ||610 AEGHIKM "Եւ յաւարտմանն սրկն. բարձր ձայնիւ գոչէ. Աւրթի." (AEGHIKN "Որթի:") C "...սրկն. ձայնիւ գոչէ. Աւրհնեա Տէր." (փխ. "Որթի:") N "եւ յաւարտման սրկն. գոչէ. Որթիւ": Ցպագիրներէն՝ PQ "...սրկն. ձայնեսցէ. Օրթի." OS "...սրկն. ձայնեսցէ բարձր. Օրթի." RUVV²TW "...սրկն. (V² բարձր) ձայնիւ գոչեսցէ. Օրթի:" ||611 Ամէն 22 (= O). "Քհն. դառնայ ի խորանէն (H չունի "ի խորանէն") եւ խաչակնքէ ի վերայ ժողովրդեանն եւ ասէ." (H "...ժողովրդեանն ասելով" = PQ.) Միւս Տպ. մեր դրածին պէս: ||612 Ասկէ մինչեւ տող 616 միաբան չեն 22. այնու որ մին մաս մը դրած է՝ միւսը ոչ եւն: — OPQS "Խղ. ամենեցուն" (= N, փխ. "ընդ ամենեսեան" ըստ այլ Տպ եւ 22 կամ AC եւն:) Նոյները՝ "Դպիրք" (փխ. "Դպ.") հոս եւ այլուր: — CI "Եւ հ. ք." (չունին "ընդ:") ||613 Երկրորդ "Սրկ." չունին գրեթէ ամէն 22. (AEGHIKM) որով միացած են "Երկիւղածութեամբ լուարուք Սրբոյ աւետարանիս" եւն. իսկ CN չունին "Սրբոյ աւետարանիս" եւն խօսքն ալ: Ցիշեալներէն՝ E լոկ "...լուարուք. ըստ Մատթէոս." K "...լուարուք, սրբոյ աւետարանիս որ ըստ." H "...լուարուք սրբոյ աւետարանին ըստ ցուցանելոյ աւուրն." I "...լուարուք սրբոյ աւետա-

*Եւ սարկաւագն ընթերցցի զաւետարանն. եւ յաւարտն ասասցեն ամենեքեան.* **փառք քեզ տէր Աստուած մեր:**

ՀԱՆԳԱՆԱԿ

**ԺԳ.** — *Եւ ասասցեն զՀաւատամքն.* **Հաւատամք ի մի Աստուած Հայրն ամենակալ, յարարիչն երկնի եւ երկրի՝ երեւելեաց եւ աներեւութից: Եւ ի մի տէր Յիսուս Քրիստոս յՈրդին Աստուծոյ ծնեալն յԱստուծոյ Հաւրէ միածին, այսինքն յէութենէ Հաւր [կամ՝ նախ քան զամենայն յաւիտեանս:] Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ ծնունդ եւ ոչ արարած: Նոյն ինքն ի բնութենէ [կամ՝ համագոյակից] Հաւր, որով ամենայն ինչ եղեւ. յերկինս եւ ի վերայ երկրի, երեւելիք եւ աներեւ-**

---

բանեին, ամէն ժողովուրդը՝ ձայն առ.„ իսկ GM "որպէս աւետարանիս ըստ Մատթէոսի„ (չունին "որ„։) ‖[615] "Ամէ Աստուած„ ունի տպագրաց մեծագոյն մասն (OPQSTV[2]W) եւ N. բայց մեր փակագծի մէջ աւելցուած "աւթէաւս„ (ὁ θεός) յունարէնն՝ տպագիրներէն RUV եւ ձեռագիրք ACDEGHIKM. (A "աւթէ աւթէաւս.„ CE "աւթէոս„. IH "աւթէաւս.„ M "աւթեաւս.„ K "օթէոս„, իսկ G "օթիաւս։„) ‖[616] Բոլոր 22. "Եւ սրկն. ընթեռնու (= O) զաւետարանն (NI "եւ ընթեռնուն զաւետարանն„) եւ յաւարտն (ACHIN յաւարտմանն) ասեն ամենեքեան.„ (C չունի "ամենեքեան.„) H վերջն այսպէս՝ "եւ աւարտման ասեն ամենեքեան ի մի բերան.„ K՝ "եւ յաւարտ ամենայնի ասեն ամենեքեան.„ իսկ G՝ "Եւ սրկն. ընթեռնու զաւետարանն։ Ով եղբարք յոյս տեղիքս որկդ. պատասուր ք՟ճ.ին առէ. իսկ յաւարտ աւետարանին ասեն ամենեքեան. փառք„ եւն։

ԺԳ. Սկզբան խորագիրը (DFJN[2] տես վերն՝ Համ. ԺԲ սկիզբը, F ի պէս I՝ "Եւ ասեն զՀաւատամքն թէ՛ ի ձայն եւ թէ՛ ի թիւ.„) այսպէս մեծագոյն մասն 22 (AEHM եւն) եւ ՏՊ. (միայն 22 "ասեն„։) Բայց C լոկ "Եւ ասեն. Հաւատամք„ եւն։ E "Եւ ասեն զՀաւատամքն որ ի Նիկիայ եղաւ։„ GK "Եւ ասեն զՀաւատամքն որ ի Նիկիայ„ (K կցէ "ասացաւ։„) Տարբեր են տպագիրներէն միայն PQ՝ „Եւ ապա ասեն զՆիկիական դաւանութիւնն ի լման։„ — Հանգանակն ունին բացի ձեռագիր եւ տպեալ խորհրդատետրներէ՝ նաեւ Դպրութիւնք (I[2]acdeghijn), զորոնք հոս "ՁԿ„ կը նշանակենք՝ ուր ամէնքը միաբան են։ ‖[619] "Հայր (փխ. "Հայրն„) ամենակալ„ ունին ACEGHMN եւ ehjn (= OPQS.) "Հայրն„՝ DFI[2]KN[2] եւ Jagi։ Բարձրեղեանի սրբագրութիւնն "Հայրն ամենակալ„ (R) ունի c ալ։ ‖[620] DF "արարող երկնի„ եւն. E "յարարողն երկնի„ (= adj, իսկ gn "արարողն„ եւն.) h "արարիչն„ եւն։ — EFHJK եւ agn "Հաւատամք եւ ի մի Տէր„ եւն։ ‖[621] Միայն h "...Քրիստոս Որդին Աստուծոյ„ եւն։ — ADFIJNN[2] եւ aegjh "ծնեալն յԱստուծոյ.„ (= OPQSVV[2].) իսկ CEGKM եւ din "ծնեալ յԱստուծոյ.„ (= TW.) Բարձրեղեանի "ծնեցեալ„ (RVU) ունի նաեւ c Դպրութիւնն։ ‖[622] "Այսինքն յէութենէ Հաւր„ ունին ամէն 22 (A, C—N[2]) եւ ՁԿ (a, d—n.) եւ ՏՊ (OPQS.) Բարձրեղեանի սրբագրութիւնն է "նախ քան զամենայն յաւիտեանս„ (R եւ անկէ ՏԱ.) զոր ունի c ալ։ ‖[623] J նորանշան ընթերցում ունի՝ "...լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ, Աստուծոյ ծնեալն ճշմարտէ ծնեալն եւ ոչ արարեալն„ եւն։ ‖[624] J տես նախընթացն։ F "ծնեալ (= DJaghn, փխ. "ծնունդ„, բայց Ja "ծնեալն„) եւ ոչ արարեալն„ (= Ja)։ — E "եւ ոչ արարած։„ — "Նոյն ինքն ի բնութենէ Հաւր„ ունին բոլոր 22 եւ ՁԿ եւ ՏՊ (տես առղ. 622)։ Բարձրեղեանի սրբագրութիւնն (R եւ ՏԱ) "Նոյն ինքն համագոյակից Հօր„ ունի նոյնպէս c ալ։ ‖[625] DEFJN[2] "յերկինս եւ յերկիր„ (= egn, եւ a "...եւ երկրի.„) փոխանակ

ոյթք։ Որ յաղագս մեր մարդկան, եւ վասն մերոյ փրկութեան իջեալ ի յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս ի Մարիամայ սրբոյ կուսէն Հոգւովն սրբով։ Որով էառ մարմին՝ հոգի եւ միտք, եւ զամենայն որ ինչ է ի մարդ ճշմարտապէս եւ ոչ կարծեաւք։ Չարչարեալ, խաչեալ, թաղեալ, յերրորդ աւուր յարուցեալ, ելեալ ի յերկինս նովին մարմնով նստաւ ընդ աջմէ Հաւր։ Գալոց է նովին մարմնովն եւ փառաւք Հաւր ի դատել զկենդանիս եւ զմեռեալս, որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան։ Հաւատամք եւ ի սուրբ Հոգին, յանեղն եւ ի կատարեալն, [որ ի Հաւրէ եւ յՈրդւոյ բղխի,] որ խաւսեցաւ յաւրէնս եւ ի մարգարէս եւ յաւետարանս. որ էջն ի Յորդանան, քարոզեաց զառաքեալսն, եւ բնակեցաւ ի սուրբսն։ Հաւատամք եւ ի մի միայն ընդհանրական եւ առաքելական եկեղեցի։ Ի մի մկրտու-

"եւ ի վերայ երկրի" բառ մնացելոց։ ‖[626] Բոլոր ԶԶ. եւ e "իջեալ յերկնից," (= OPQ.) իսկ մնացեալ ԶԿ. (I² եւն) եւ ՏՍ "իջեալ է յերկնից" (= S)։ ‖[627] "Մարմնացաւ" բառը cj կարմրագիր ունին։ — X "մարդացաւ, ծնունդ կրկնեցել, ծնաւ" եւն. — N² "ի Մարիամայ է սրբոյ կուսէն" եւն։ ‖[628] ACDGHMN եւ egij "Հոգւով սրբով." (= OS եւ N.) իսկ EFJKN եւ միւս ԶԿ "Հոգւովն սրբով" (= PQTW, իսկ RU "Ոգւով" եւն։) — "Մարմին, հոգի եւ միտ" ունին բոլոր ԶԶ (A, C–N²) եւ ԶԿ (բաց՝ adeghin,) իսկ cj "զմարմին, զհոգի եւ զմիտ." ("մարմին" չունի միայն h։) "Եւ միտք" ունին տպագիրներէն OS եւ V, իսկ Բարսեղեանի սրբագրածն "եւ միտ"՝ RUT եւ զարմանալի կերպով նաեւ PQ (հմմտ. cj.) W ուղղած է "եւ միտս." (= X.) ‖[629] ACE "եւ զամենայն որ ինչ է մարդ" եւն փխ. "որ ինչ է ի մարդ" եւն (N² "եւ ամենայն որ ինչ է ի մարդ" եւն։) — "Ճշմարտապէս" բառէն սկսեալ թերթի է D՝ թուղթ ինկած ըլլալով։ — EFJN² "եւ ոչ կարծիս ունելով" (= adng) փխ. "եւ ոչ կարծեօք." — Բարսեղեանի սրբագրութիւնն (R) "Չարչարեցեալ, խաչեցեալ, թաղեցեալ, յերրորդ աւուր յարեալ" միայն U եւ c պահած է, եւ ոչ ուրիշ տպագիր մը։ Ձեռագիրներէն EFJadn կը կարդան "Չարչարեալ, այսինքն խաչեալ, թաղեալ" եւն. իսկ g "Չարչարեալ, այսինքն խաչեալ, մեռեալ, թաղեալ" եւն։ — ‖[630] Գրեթէ բոլոր ԶԶ. (A, E–N²) եւ adfghij "նովին մարմնովն՝ նստաւ" եւն (= OV.) իսկ C միւս ամէն տպագրաց հետ "նովին մարմնովն" եւն։ ‖[631] FJ եւ gf հոս ալ "Գալոց է նովին մարմնով." (= V), իսկ CE եւ միւսները՝ "նովին մարմնովն"։ — Բոլոր ԶԶ (ACEFGHJKMNN² եւ I²adfghin "...փառաւք Հաւր՝ դատել" (= O, փխ. "ի դատել" եւն միւս տպագրաց հետ։) ‖[632] EGH եւ aj "որոյ թագաւորութեան ոչ գոյ" եւն. իսկ N² եւ d "որոյ ասացք եւ անմահ թագաւորութեանն" եւն (= e "որոյ անմահ թագաւորութեանն" եւն։) ‖[633] AEMN եւ f "յանեղ եւ ի կատարեալ" (=O), միւս ձեռագիրք եւ տպագիրք "յանեղն եւ ի կատարեալն։" — "Որ ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխի" չունին բոլոր ԶԶ. թէ խորհրդատետրի եւ թէ Դպրութեան՝ բաց ի c դրչագրէն, որ ունի. նոյնպէս չունի ՏԻ (OPQS.) Հռոմի (R) տպագրութենէն նոյնը պահած են ՏՍ (TUVV²W.) ‖[634] N² "յաւրէնս եւ մարգարէս" եւն. n՝ "յօրէնսն եւ ի մարգարէսն" եւն։ — CE "Որ էջ ի Յորդանան" (= O, փխ. "էջն" բառ այլոց.) H "Որ էջն Յորդանան" (չունի "ի"։) ‖[635] Միայն C "քարոզեաց յառաքեալսն." եւ N² "քարոզեաց զառաքեալսն" (= Jahj.) միւս բոլոր ԶԶ (AEFGH եւն) "քարոզեաց զառաքեալսն", զոր ունին նաեւ ՏՊ (միայն O "քարոզեաց առաքեալսն.") ուստի Բարսեղեանի սրբագրութիւնը չէ այս։ — C "բնակեցաւ ի սուրբսն." F "բնակեցաւ ի սուրբս։" ‖[635–636] Հոս շատ պէսպէս են ԶԶ։ ACEGHI²KMN "Հաւատամք եւ ի մի միայն (A "եւ ի միայն", ի լուս. "եւ ի յայս") ընդհան-

թիւն, յապաշխարութիւն, ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց, ի յարութիւն մեռելոց, ի դատաստանսն յաւիտենից հոգւոց եւ մարմնոց, յարքայութիւնն երկնից, եւ ի կեանսն յաւիտենականս։

Իսկ որք ասենն՝ էր երբեմն, յորժամ ոչ էր Որդի, կամ էր երբեմն, յորժամ ոչ էր սուրբ Հոգին։ Կամ թէ յոչէից եղեն, կամ յայլմէ էութենէ ասեն լինել զՈրդին Աստուծոյ, եւ կամ զսուրբ Հոգին։ Եւ թէ փոփոխելի են՝ կամ այլայլելի, զայնպիսիսն նզովէ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի։ — Սրկ. Օրհնեա տէր։ — Լուսաւորչին. Իսկ մեք փառաւորեսցուք որ

---

րական եւ առաքելական եկեղեցի"՝ չունենալով "սուրբ" բառն (= cfij.) FJN$^2$ եւ aeng "Հաւատամք եւ յայսմ (a "այսմ." e "յայս միայն") ընդհանրական կաթուղիկէ եւ առաքելական (ng սուրբ) եկեղեցի։ Հաւատամ (n չունի) եւ ի մի մկրտութիւն" եւն։ Իսկ dh "Հաւատամք եւ ի մի կաթուղիկէ եւ առաքելական յեկեղեցի (h "եւ ի մի միայն ընդհանրական կաթուղիկէ եկեղեցի,) ի մի մկրտութիւն" եւն։ — Տպագիրք մեր դրածին պէս, միայն PQ "...եւ առաքելական սուրբ" եւն. իսկ ORUS "յընդհանրական եկեղեցի"՝ չունենալով "սուրբ" (որ կայ ի TVV$^2$W = PQ.) ‖636–637 EN$^2$ "Խոստովանիմ ի մի մկրտութիւն" եւն. FJ եւն "Հաւատամք ի մի մկրտութիւն" եւն, տես վերը։ — Միայն d "յապաշխարութեամբ քաւութիւն" (փխ. "յապաշխարութիւն, ի քաւութիւն" եւն։) ‖637–639 J "...մեղաց, յարութիւն մեռելոց" եւն (չիք "ի.") F "...ի յարութիւնն մեռելոց" եւն. — N$^2$ "...մեռելոց, դատաստանն յաւիտենական հոգւոց եւ մարմնոց, արքայութեանն եւ ի կեանսն յաւիտենականս։" — EFJN$^2$ahin "ի դատաստանն" (= PQS, փխ. "դատաստանսն" ըստ այլ 22 եւ ՏՊ., տես ACGHI$^2$M եւն եւն.) — JN$^2$ag "յաւիտենական" (փխ. "յաւիտենից.") — j չունի "հոգւոց մարմնոց, յարքայութիւնն երկնից." — E "...մարմնոց, զարքայութիւնն երկնից" եւն, K եւ ghn "յարքայութիւն երկնից." J "արքայութիւն երկնից." O' "ի յարքայութիւնն." N$^2$ "...մարմնոց արքայութեանն" (= e "...մարմնոց յարքայութեան.") միւսները մեր դրածին պէս. — F "եւ ի կեանս յաւիտենականս." (N "...կեանսն յաւիտենական.") դարձեալ՝ d "ի կեանսն յաւիտենականսն." K "եւ ի կեանսդ յաւիտենականս։" ‖639 F հոս ի վերջոյ կը յաւելու "Մինչեւ տաք է հաւատոյ բանն." (= j "մինչեւ աստ են հաւատոյ բանք։") ‖640 PQ "Որդին" (= JN$^2$aden.) ‖641 ACEGH եւ e "սուրբ Հոգի." (RU "Ոգին.") — FJKN$^2$ եւ aeg "յոչէից եղեւ" (փխ. "եղեն.") ‖641–642 Միայն CGK ըստ ՏՊ. "յայլմէ էութենէ ասեն լինել (OPRS "լինէլ") զՈրդին" եւն. միւսները՝ AEFHI$^1$JMNN$^2$ եւ adefhijn "յայլմէ էութենէ կամ է գոյութենէ (F "է գոյացութենէ") ասեն լինել զՈրդին" (E "ասեն զՈրդին"՝ չունի "լինել." իսկ N$^2$I$^2$aghn "ասեն լինել զանեղ Որդին" եւն. նաեւ F "զանեղ Որդին." J "զանեղ եւ զանճառ Որդին։.") ‖642–643 "Եւ" չունին EFHK (նախ քան "թէ փոփոխելի" եւն։) — CH "եթէ փոփոխելի". E "Կամ թէ փոփոխելի" եւն։ — PQ եւ j "թէ փոփոխելի են կամ այլայլելի" եւն։ FJ "թէ այլայլելի են կամ փոփոխելի," (= ga.) N$^2$ "թէ այլայլելի է կամ փոփոխելի" եւն։ — EFga "զայնպիսիս ասացեալն (փխ. "զայնպիսիսն") նզովէ" եւն, իսկ Jan "զայնպիսիս ասացեալն ոչ ընդունի, այլ նզովէ" եւն։ — Ճիշդ "Զայնպիսիսն" բառով կը սկսի դարձեալ D (Թղ. 121ա։) — DDEFI$^2$JN$^2$ եւ aeijn "կաթուղիկէ եւ առաքելական սուրբ եկեղեցի." (= PQ.) ‖644 Քիչերն ունին "Սրկ. Աւրհնեա Տէր", այն ալ միայն Դպրութիւնք. այսպէս՝ I "Զկնի հաւատամքին ձայնէ սրկն. Աւրհնեա Տէր։ Քհ. Իսկ մեք փառաւ։ Կրկնէ զնոյնն սրկն.։ Ժողովս. Ամէն" եւն։ I$^2$ "Եւ ասէ Սրկ. Իսկ մեք" եւն։ Նոյնպէս F "Եւ յետ սորին քհն. երիցս երկրպագէ եւ համբուրէ զսեղանն։ Եւ սրկն. բարձր գոչէ զդաւանութիւն ի սուրբ Լուսաւորչէն. Իսկ մեք"

*յառաջ քան զյաւիտեանս, երկիրպագանելով սրբոյ Երրորդութեանն, և մի աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։ Ժող. Ամէն։*

## Խ Ա Ղ Ա Ղ Ա Կ Ա Ն Ք

ԺԳ. — *Ու սարկաւագն քարոզեսցէ ի ձայն. Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ — Դպ. Տէր ողորմեա։ — Եւ ևս հաւատով աղաչեսցուք և խնդրեսցուք ի տեառնէ Աստուծոյ և ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ ի ժամուս պաշտաման և աղօթից. զի արժանի ընդունելութեան*

---

են։ Ուրիշ ձևով է C՝ "Որհն. Աւրհնեա Տէր։ Ժամարարն. Խոյ մեծ քառասուրբեացուսց որ յառաջ քան զյաւիտեա։ Որհն. Երկիրպագանելով սրբոյ Երրորդութեան Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ յաւիտեան։ Դպիրքն. Ամէն։ Որհ. Եւ եւս եւ." են։ Միւսները "Լուսաւորչին" խորագիր միայն կու տան չափազանց պէսպիսութեամբ։ Նախ ամէնեւին խորագիր չունին ACEJN եւ fgh. (n եւ ոչ "Իսկ մեք" են գրած է։) D "ի սուրբ Լուսաւորչէն մերմէ տասցեալ է." նոյնպիսի՝ Ha "Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին է (չունի a "է") տասցեալ." Հմմտ. C՝ "Լուսաւորչին է տասցեալ". PQ "Լուսաւորչին տասցեալ" եւ d "ի սուրբ Լուսաւորչէն է ասել բանս։" GK "Լուսաւորչին է." N$^2$ "ի Լուսաւորչէն մերմէ." (— i "ի Լուսաւորչէն մերմէ սուրբ Գրիգորէ". եւ j "ի Լուսաւորչէն մերմէ Գրիգորէ տասցեալ։") Միւսները (M եւն) եւ տպագիրք (PQէն զատ) պարզ "Լուսաւորչին." զոր X այսպէս ունի՝ "Եւ համբուրեալ զսեղանն՝ տեառնագրեսցէ զինքն ասելով զԼուսաւորչին" եւն։ ‖[645] D "...փառաւորեսցուք՝ որ յառաջն է քան զյաւիտեանս" եւն։ — V$^2$ "երկրպագանելով սուրբ Երրորդութեանն" եւն։ — "Երրորդութեանն" ունին ACDFGMN եւ cghij ու տպագիրներէն OPQRSTUVV$^2$, իսկ EHKN$^2$ "Երրորդութեան" (= W)։ Յաջորդ "եւ մի աստուածութեանն" ունի յիշեալք (նաեւ H), միայն EKN$^2$ եւ fj "մի աստուածութեան" (= W.) Տարբեր J՝ "...Երրորդութեանդ եւ մի աստուածութեանդ... Հոգւոյն սրբոյ յաւիտեանս. Ամէն։" ‖[647] Ինչպէս J, նոյնպէս F վերջաւորութիւնը ("այժմ եւ միշտ" եւն) չունի, այլ լոկ "...Հոգւոյն սրբոյ. Ամէն։" Այս "ամէն" կը կցեն առանց "Ժող." խորագրի՝ ADN եւ տպագիրք OPQS, իսկ V չունի "Ժող. Ամէն," նոյնպէս X որ յաջորդներն ալ չունենալով կ'ըսէ հոս՝ "Տարածեալ ձեռօք տասցէ ի ծածուկ զաղօթս. Տէր մեր" եւն. (տես տող 672։) Միւսներէն՝ GHK "Դպ. Ամէն." E եւ այլ տպ. (RU եւն.) "Ժող. Ամէն." իսկ N$^2$ "Ժող. ասէ՝ Ամէն Տէր Աստուած։"

ԺԳ. Խաղաղականքս չունին ի հարկէ ՏԳ. (խորհրդատետրները), որոնք սկզբան մէկ երկու տողը միայն կը յիշեն։ Ունին ոչ միայն ՉԽ (ձեռագիր Խորհրդատետրները), այլ եւ ՉԿ կամ Դպրութիւնք (a—j) եւ R$^2$V$^2$stv, բայց s$^{2-4}$ միայն տանց սկզբնաւորութիւնը։ ‖[649] Խորագիրս չունին JH (H լոկ "Որհ."), եւ E՝ ուր ջնջուած է։ Միւսներէն սկզբան "եւ" չունին GKM։ — Ամէն ՉՉ.՝ "քարոզէ" (= PQ.) — "ի ձայն" չունին DFMN$^2$. C ալ տարբեր "եւ ասէ" ունի։ ‖[650] CFGH "Դպ. Տէր ողորմեա" (= OPQS.) K չունի խօսքս, իսկ M լոկ "Տէր ող."։ Հմմտ. Հտծ. ԺԱ։ — ‖[652] AI$^2$MN (= f) "...խնդրեսցուք յԱստուծոյ Հաւրէ եւ ի Տեառնէ ամենակալէ, ի ժամուս պաշտաման" եւն։ — ACEFGJKMN "ի ժամուս (EFM ի ժամու) պաշտաման եւ աղօթից." (= abgh եւ V$^2$ v. իսկ j "ի ժամուս պաշտամանս.") միւսները (DHI$^2$N$^2$ եւ R$^2$t եւն.) "ի ժամու պաշտաման" եւն։ — M "Զի Աստուած արժանի ընդունելութեան արասցէ." եւն (— ef.) իսկ d "արժանի արասցէ" (չունի ընդունելութեան.) h "զի արժանի ընդունելութեամբ արասցէ" եւն. D "արժանի ըն-

*տպասցէ, լուիցէ ձայնի աղաչանաց մերոց. ընկալցի զխնդրուածս սրտից մերոց, թողցէ զյանցանս մեր, ողորմեսցի ի վերայ մեր։ Աղաւթք մեր եւ խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծի տէրութեան նորա։ Եւ նա տացէ մեզ միաբան միով հաւատով, արդարութեամբ վաստակել ի գործս բարիս. զի ողորմութեան զշնորհսն իւր տացէ ի վերայ մեր. տէրն ամենակալ կեցուսցէ եւ ողորմեսցի։ — Դպ. Կեցո տէր։ — Սրկ. Զժամ սուրբ պատարագիս, եւ զառաջիկայ աւուրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի տեառնէ խնդրեսցուք։ — Դպ. Շնորհեա տէր։ — Սրկ. Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց ի տեառնէ խնդրեսցուք։ — Դպ. Շնորհեա Տէր։ — Սրկ. Զքաւութիւն եւ զթողութիւն յանցանաց մերոց ի Տեառնէ խնդրեսցուք։ — Դպ. Շնորհեա Տէր։ — Սրկ. Զսրբոյ խաչին մեծ եւ կարող զաւրութիւն յաւգնականութիւն անձանց մերոց, ի Տեառնէ խնդրեսցուք։*

---

գունելութեան տրասցէ» են։ ||653 AE «Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց» են. (= abj եւ v.) — Միայն i «զխնդրուածս է սրտից» են։ ||655 DEFHJKN² «աղօթք մեր ...մտցէ առաջի» են. (= adegh.) այլք լաւ եւս «մտցեն», իսկ G «մտցէն։» — Նոյն EHJKN² եւ դարձեալ I²aegj «առաջի մեծի եւ ահաւոր տէրութեան նորա։» Մնացեալք եւ ՏՊ. մեր դրածին պէս։ ||656 EHI²KNN² եւ eghi «հաւատով եւ արդարութեամբ» են։ Միւսներն այս «եւ» չունին տպագրաց պէս (v «հաւատով արդարութեան» են), բայց նաեւ հոս չափազանց պէսպիսութեամբ։ AGK «յարդարութիւն վաստակել ի գործս բարիս.» C «արդարութիւն վաստակել զգործս բարիս.» DEFJN² «արդարութեամբ վաստակել զգործս բարեաց.» M «յարդարութեան վաստակել ի գործս բարիս.» N «արդարութեան վաստակել ի գործս բարի։» Ձե. օրինակներէն՝ bcegh տպագրութեան պէս (h «ի գործս բարեաց.») իսկ adhi «արդարութեամբ վաստակել զգործս (dhi «է գործ») բարեաց.» մինչ fj «յարդարութեան վաստակիլ ի գործս բարիս։» ||657 C «Զի ողորմութեան շնորհան իւր,» են. EDF «զի ողորմութեան զշնորհսն.» (E «ողորմութիւն զշնորհս.») GJMN «ողորմութեան զշնորհս իւր» (= acdefk.) F եւ այլք տպուածին պէս են։ — JN «Տէր ամենակալն» են։ ||658 Այս «Դպ. Կեցո Տէր» (AEN «Ժող.» են.) ունին Ձեռագրաց մեծագոյն մասն. միւս անգամներն՝ ոչ, վասն զի եւ աւելի յետք կը համառօտեն գրեթէ ամէնքը՝ միայն սկզբները յիշելով. (աւելի լիակատար ունին FJ եւ be եւ տպագիրք R²V²tv.) AM օրինակի համար այսպէս կը համառօտեն՝ «Սրկ. Զժամ սուրբ պատարագիս եւ զառաջիկայ աւուրս խաղաղու.։ (A Ժող. Շնորհեա Տէր։ Սրկ.) Զհրեշտ.։ Զքաւ.։ Զսրբոյ։ Եւ եւս։ Զանձ.։ Ողորմ.։ Մինչ նոքա» են. (տես տող 672։) Նոյնպէս կամ նման կերպով ունին միւսներն ալ։ N այս մասերը չունի։ ||658–659 «Զժամս ...եւ զառաջիկայ աւուրս» են՝ այսպէս AECGKM, եւ այն՝ C առնն այսպէս կարճ՝ «Զժամ սուրբ պատարագիս եւ զառաջիկայ օրս զՏէր.» K աւելի կարճ՝ «Զժամս եւ զառաջիկայ աւուրս.» EG «Զժամս սուրբ պատարագիս եւ զառաջիկայ օրս խաղաղութեամբ ի Տեառնէ խնդ.» (= միայն O տպագիրներէն, որ չունի «անցուցանել» բայն առանց պէս։) Բոլորովին տարբեր են DFHI²JN² եւ acg՝ «Զժամ սուրբ պատարագիս եւ զառաջիկայ եղեւոր ընթացս (D ընթացս †) հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք։» H աւելի կարճ եւ ոչ համառօտութեամբ ունի։ ||660 Միայն K «Տէր ողորմեա, շնորհեա Տէր.» տպուածին պէս FGI²Jabej եւ տպագիրք։ ||661 F «...պահապան անձանց մերոց հաւատով։ Զքաւութիւն» են։ ||663–664 F «...կարող զաւրութիւն օգնութիւն» են։ R²b «յօգնականութիւն» (փխ. «յօգնութիւն.») I² (Թղ. 22բ) այսպէս ունի այս կողմն՝ «Զսրբոյ։ Ամենա

*— Դպ. Շնորհեա տէր: — Սրկ. Եւ եւս եւ վասն միաբանութեան ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ, զտէր աղաչեսցուք: — Դպ. Տէր ողորմեա: — Սրկ. Զանձինս մեր եւ զմիմեանս ի ձեռն Աստուծոյ ամենակալի յանձն արասցուք: — Դպ. Քեզ տէր յանձն եղիցուք: — Սրկ. Ողորմեաց մեզ տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում: Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ: — Դպ. Տէր ողորմեա, տէր ողորմեա, տէր ողորմեա:*

*Մինչ նորա երգեն, քհն. զաղաւթս ասէ ի ծածուկ. Տէր մեր եւ փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծդ ես ողորմութեամբ, եւ առատ պարգեւաւք բարերարութեան քո: Որ դու քոյին կամաւ ի ժամուս յայսմիկ համբերեցեր չարչարանաց խաչի եւ մահու յաղագս մեղաց մերոց, եւ պարգեւեցեր առատապէս զպարգեւս հոգւոյդ սրբոյ երանելի առաքելոցն: Հաղորդս արա եւ զմեզ տէր աստուածային պարգեւացդ, թողութեան մեղաց եւ ընդունելութեան հոգւոյդ սրբոյ: — Սրկ. Աւրհնեա տէր: — (Քհն.) ի ձայն. Որպէս զի արժանաւորք եղիցուք գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ հաւր եւ ընդ սրբոյ հոգւոյդ,*

---

Տէր: Քհն. Խաղաղութիւն ամենեցուն: Սրկ. Եւ եւս միաբան վասն„ ևն: F ալ Միացածը համառօտ: ‖665 Այսպէս bj. իսկ I²Jeg (= v) “Եւ եւս միաբան վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ զՏէր աղաչեսցուք„ ևն: ‖672 AM “Մինչ նա քարոզէ (M նորա երգեն), քհն. զաղաւթս ասէ ի ցած.„ (ըստ M նաեւ O միայն տպագիրներէն.) DFN “Եւ մինչդեռ (F մինչ) սրկն. քարոզէ, քհն. զաղաւթս ասէ (D ասէ զաղաւթս. N² կցէ “ի ծածուկ.„) զի ի միասին աւարտեսցին (F աւարտին.)„ որուն վրայ կը յաւելու D՝ “եւ խաղաղութիւն տայ ժողովրդեան:„ J պարզ՝ “Քհն. զաղօթ ծածուկ ասէ.„ H՝ “Մինչ նորա, քհն. բաղկատարած ասէ զաղաւթս ի ծածուկ.„ եւ CK “...քհն. ասէ զաղօթս ի ծածուկ:„ Միւսները տպագրածին պէս: Տպագիրներէն՝ S “Մինչ նորա երգիցեն, քհն. ասասցէ ի ցած.„ PQ ալ նոյն է տպագրածին հետ, միայն՝ “...քհն. ասասցէ ի ծածուկ:„ — Աղօթքս ունին նաեւ cfhi: ‖673 Միայն i “որ մեծ ես„ ևն. — E “...բարերարութեան քո, Որդւոյ քոյին„ ևն (փխ. “Որ դու քոյին„ ևն:) — DF “Որ դու քոյին կամաւ (F կամաւք) համբերեցեր ի ժամուս յայսմիկ չարչարանաց„ ևն: ‖675 H “պարգեւեցեր զպարգեւս„ (չունի “առատապէս.„) DFJ “պարգեւեցեր առատապէս զպարգեւս եւ զշնորհս հոգւոյդ„ ևն. N² “պարգեւեցեր զշնորհս հոգւոյդ.„ իսկ h “պարգեւեցեր ի մեզ առատապէս„ ևն: ‖676 Բոլոր 22 (A–N²) եւ fhi “Երանելի առաքելոցն„ (= OPQS, եւ VV²X.) Բարսեղեանի սրբագրութիւնն (R) “Երանելեաց առաքելոցն„ պահած է միայն U, եւ նոյնպէս c ալ: TW ուղղած են “Երանելոյ առաքելոցն:„ — DEJN “Հաղորդս արա զմեզ„ ևն (F “...արա եւ զմեզ„՝ բոլոր միւսներուն հետ:) ‖677 DFJN² “...պարգեւացս այսոցիկ ի թողութիւն մեղաց եւ յընդունելութիւն (JN ընդունելութիւն) հոգւոյդ սրբոյ.„ F “...պարգեւացդ այսոցիկ, թողութեան„ ևն. E “պարգեւացդ, թողութեան„ ևն: — ACEGHIKMN եւ fh “...թողութեան մեղաց, ընդունելութեան„ ևն (h “ընդունելութիւն„ ևն:) ‖678 Այս “Աւրհնեա Տէր„ ունին միայն I²c (I² “Ամէն, աւրհնեա Տէր,„) եւ տպագիր Դպրութիւնք (R²V²tv ևն:) Միւսները (ACDEFGH ևն.) նախընթաց աղօթքին կը կցեն “Ի ձայն. Որպէս զի„ ևն. (f “Ձայն. Որպէս„ ևն. N² չունի “ի ձայն:„) — E “Որպէս զի արժանի եղիցուք„ ևն. D “...արժանաւորք լիցուք„ ևն: ‖679 N “...գոհանալով փառաւորել„ (փխ. “գոհութեամբ„ ըստ այլոց՝ ACD ևն.) — EFH “...ընդ

այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։ — Խաղաղութիւն † ամենեցուն։ — Դպ. Եւ ընդ հոգւոյդ քում։ — Սրկ. Աստուծոյ երկրպագեսցուք։ — Դպ. Առաջի քո տէր։

ՔՀՆ. Խաղաղութեամբ քով Քրիստոս փրկիչ մեր՝ որ ի վեր է քան զամենայն միտս եւ զբանս, ամրացո զմեզ եւ աներկիւղ պահեա յամենայն չարէ։ Հաւասարեցո զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո՝ որք հոգւով եւ ճշմարտութեամբ քեզ երկիր պագանեն։ Վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Աւրհնեալ տէր մեր Յիսուս Քրիստոս։ — Դպ. Ամէն։ — Սրկ. Աւրհնեա տէր։ — ՔՀ. Տէր աստուած աւրհնեսցէ † զամենեսեանս։

---

Հայր եւ սուրբ Հոգւոյդ„ եւն։ ||680—682 Բոլոր առանց տեղ ունին տպագիր խորհրդատետրները պարզապէս "Խղ. † ամենեցուն։„ Լիակատար ունին Դպրութիւնք եւ OV$^{2}$X։ Ձեռագիրք ալ պարզ "Խղ. ամեն.„ (A լոկ "Խաղաղութիւն.„ CKM "Խղ. ընդ ամենեսեան.„ E' "Խղ. ամենե.։ Աստուծոյ երկրպ։„) լիակատար ունին FJ. (F "...Սրկն. եւ Ժող. Աստուծոյ երկրպ...։ ՔՀն. ասէ զաղաւթս. Խաղաղութեամբդ„ եւն։) Երկական են N եւ N$^{2}$, այսինքն N' "Խղ. ամեն.։ Դպ. Եւ ընդ հ. ք.։ Սրկ. Աստուծոյ երկրպ.։ Դպ. Առաջի քո Տէր։ Զժամ ասութ պատարագին եւ զառաջինկոյ ասէ խաղաղութեամբ։ Զհրշտկ.։ Զփառ.։ Զասութ։ Եւ եոս։ Զանձին։ Ողորմ.։ Խաղաղութեամբ քով Քրիստոս„ եւն։ N$^{2}$ "ՔՀ. ասէ. Խղ. ամեն.։ Դառնա ժողովրդեան։ Սրկն. ասէ. Աստուծոյ երկրպ.։ Ժողն. ասէ. Առաջի քո Տէր։ Եւ խոնարհին միաբան երկրպագութիւն Որդւոյն Աստուծոյ։ Խաղաղութեամբդ քո Քրիստոս„ եւն։ ||683 Աղօթքս ալ ունին cfhi Դպրութիւնք։ — DF "Խաղաղութեամբդ քո Քրիստոս„ եւն ("քո„ ունին նաեւ JN$^{2}$.) ||685 "Հաւասարեցո„ դրինք ըստ ACDEGHIJKMNN$^{2}$, ուստի բոլոր ՁՁ. (= fh) եւ տպագիրներէն O, միայն ci "Հաւասարեա զմեզ„ են, զոր առած են ՏՊ. (PQRSTUVV$^{2}$W.) — N$^{2}$ "Հաւասարեցո ընդ ճշմարիտս„ (չունի "զմեզ։„) ||686 DFN$^{2}$ եւ J "...ճշմարտութեամբ Քրիստոսի անմահիդ երկրպագանեն„ (J "երկիրպագանեմ։„) DJ կը կցեն՝ "Ի ձայն. Վասն զի„ եւն։ ||686 C եւ f "վայելեն փառք„ եւն։ ||688—690 "Ամէն„ ունին ամէնքը, իսկ D "Ժող. Ամէն։„ — Անկէ ետքը շատ պէսպէս են ՁՁ։ D միայն՝ "ՔՀն. դառնա առ ժող. եւ հրաման տա երախայիցն ելանել ասելով. Տէր Աստուած օրհնեսցէ զամենեսեանս։„ F' "Ժող. Ամէն։ Սրկն. Աւրհնեա Տէր։ (ՔՀ.) Աւրհնեալ Տէր մեր եւ փրկիչ Յիսուս Քրիստոս։ Դպ. Ամէն։ ՔՀն. հրամայէ երախայիցն ելանել եւ ապա ասէ. Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեան.„ Fի պէս N$^{2}$ "Ժողովուրդն ասէ. Ամէն։ ՔՀն. դառնայ առ ժողովուրդն եւ ասէ ի ձայն. Աւրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Ժող. Ամէն։ ՔՀ. դառնա առ ժողովուրդն եւ հրաման տա երեխայիցն ի դուրս ելանել եւ ապա ասէ. Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեանս. Ամէն։„ J' "Ամէն։ Աւրհնեալ Տէր մեր եւ փրկիչ Յիսուս Քրիստոս։ Աւրհնեա Տէր։ Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեանս։ Դպ. Ամէն։„ — Միւսներէն EI (= D) "ՔՀՆ. Աւրհնեալ Տէր„ եւն. AC "Ի ձայն. Աւրհնեալ„ եւն։ X "Աւրհնեալ Տէր մեր † Յիսուս„ եւն։ FJ "...տէր մեր եւ փրկիչ Յիսուս„ եւն. — AJN եւ PQS "...Յիսուս Քրիստոս. Ամէն.„ ուստի առանձին չունի "Դպ. (կամ Ժող.) Ամէն.„ ըստ CEF եւն եւ ՏՊ։ — Ըստ ՏՊ. նաեւ EGHI եւն "ՔՀՆ. Տէր Աստուած„ եւն։ AMN չունի "ՔՀն.„ խորատագիրը (= S.) C' "ՔՀն. ասէ.„ իսկ PQ. "ՔՀն. խաչակնքէ ի վերայ ժողովրդեանն ասելով ի ձայն. Տէր Աստուած„ եւն. — CEFKM "աւրհնեսցէ զամենեսեան„ կ'ըսեն փխ. "զամենեսեանս.„ HIJN$^{2}$ հոս կը կցեն՝

## Գ. ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ ՊԱՏԱՐԱԳ

ԺՆԵ. *Սրկ.* — *Մի՛ ոք յերեխայից, մի՛ ոք ի թերահաւատից, եւ մի՛ ոք յապաշխարողաց եւ յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս։*

*Դպիրքն եղանակեսցեն. Մարմին տէրունական եւ արիւն փրկչական կայ առաջի. երկնային զաւրութիւնքն յաներեւոյթս երգեն եւ ասեն անհանգիստ բարբառով. սուրբ սուրբ սուրբ Տէր զաւրութեանց։*

---

“Դպ. (կամ Ժող.) Ամէն.„ իսկ PQ “Ցեառ այսորիկ եթէ եպ. իցէ՝ ի բաց հանցէ զեմիփորոնն։„

ԺԵ. Հոս (տող 692—700 եւ 731—732) տեսակաւորութեամբ ունին այլեւայլ ձեռագիրք եւ տպագիրք. բայց յետկանս նոյն մասերն ըլլալով։ ACEGHIKMN եւ տպագիր խորհրդատետրներն (որ սկզբնաւորութիւնքը միայն կը նշանակեն՝ խրատագիրներէն դուրս)՝ այս կարգաւ ունին՝ “Սրկ. Մաղթանք առ Տէր, եւն (տես տող 697—698։) Սրբասացութիւն ըստ խորհրդեան աւուրն (տես տող 699. AN “Եւ ասի Սրբասացութիւն„ եւն = O. իսկ C “Եւ դպիրքն եղանակեն սրբասացութիւն„ եւն = PQV$^{2}$ “Եւ դպիրքն ասեն զՍրբասացութիւնն ըստ խորհրդոյ աւուրն։„) Ցետ որոյ սրկ. յոյնեսցէ. Մի՛ ոք յերեխայից, եւն (տես տող 692–693. EMK լոկ “Սրկն. ձայնէ„ ընդհանրապէս “ձայնէ„ բոլոր 22. HIN “Եւ յետոյ սրկն. ձայնէ.„ իսկ G չունի խորագիրն = PQV$^{2}$, այլ լոկ “Սրկ.„ մինչ O “...ձայնէ եւ ասէ„, S՝ “...սրկն. է յոյն.„ եւ C “Ցեառ այնորիկ սրկն. բարձր ձայնիւ ասէ. Մի՛ ոք„ եւն։) Դպիրքն եղանակեսցեն. Մարմին տէրունական„ եւն (տես տող 694—606. 22 “...եղանակեն„. բայց AGK չունին այս բառն, այլ լոկ “Դպիրքն„ = PQ.) Անկէ ետքը կու գայ ի I$^{2}$GK Վերաբերութեան կարգը (տես տող 738 եւն), իսկ միւսները կը կցեն “Եւ եղանակեսցեն Որք զքերովբէիցն„ եւն (տող 732—36։) — Մեր գրածին կամ վերը տպուածին կարգաւ ունին ամէն Դպրութիւնքն (R$^{2}$V$^{2}$stv եւն.) ձեռագիրներէն J եւ N$^{2}$, իսկ DF նախ կը դնեն նախընթացներուն կարգաւ (= AC եւն), յետոյ կ'ըսեն թէ “եթէ տաւն լինի„ կամ “զատկին„ ուրիշ կարգաւ կ'ըսուի, այսինքն մեր գրածին պէս։ DF տես վերն (էջ 577, § 12—13։) J այսպէս՝ “...Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեանս. Դպ. Ամէն։ Սրկ. Բարձր ասէ. Մի՛ ոք, եւն. Դպ. Մարմին, եւն։ Սրկ. Սաղմոս„ եւն. յետոյ կը դրուին Սրբասացութիւնք եւ անկէ ետքը՝ “Մինչդեռ Դպ. եղանակեն, քհ. զաղօթս ի ծածուկ ասէ. Ոչ ոք արժանի է„ եւն։ N$^{2}$ “Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեանս. Ամէն։ Սրկն. քարոզէ բարձր. Մի՛ ոք, եւն։ Ժող. միաբերան ասեն. Մարմին, եւն։ Սրկն. ասէ ի ձայն բարձր զայս. Սաղմոս, եւն։ Եւ ասի Սրբասացութիւն ըստ պատշաճի աւուրն։ Իսկ ի տէրունական տօնս, սրկ. լուցանէ մոմեղէն եւ բուրվառ զոյգ առաջի, եւ զենի վերաբերեն զսուրբ նուէրն եւ զգուշութեամբ ի սեղանն շուրջ ածէ։ Եւ դպիրքն եղանակեն. Որք զքերովբէիցն խորհրդաբար„ եւն։ Շատ տարբեր է B, դնելով նախ Սրբասացութիւնքն, յետոյ “Ոչ ոք է արժանի„ աղօթքն եւ անկէ ետքը այս մասերն, տես էջ 569։ ‖692 “Մի՛ ոք„ ընդհանրապէս ամբողջ ունին ABDEGHI$^{2}$MNN$^{2}$ եւ 2Կ. (abeglnop) եւ տպագիր Դպրութիւնք։ — CJab “մի՛ ոք ապաշխարողաց„ եւն։ — D “աստուածային խորհուրդ.„ Ja “(մերձեսցի) աստուածային խորհրդուն.„ (H “աստուածային խորհրդոյն.„) եւ R$^{2}$V$^{2}$ “յաստուածային խորհուրդն։„ ‖694—696 “Մարմին„ ամբողջ ունին ABCDGHIJMN$^{2}$ եւ 2Կ՝ (abegknopq) եւ տպագիր Դպրութիւնք։ Խրատագիրն տես քիչ մը վերը՝ (D “ժողովուրդն ասեն.„ B “ժողով միաբան երգ։„) — “Մարմին... կայ առաջի„՝ բոլոր 22. (A—N$^{2}$) եւ 2Կ. (a—p) եւ V$^{2}$sv։ Հռոմի (R$^{2}$) տպագրութեան համեմատ նաեւ t եւն՝ “...կայցէ առաջի„ եւն։ — Երեք տպագիրքն չի՝ “յաներեւոյթ երգեն„ եւն. նոյնպէս՝ Jaes' “երկնային զօրութիւնքն աներ-

*Սրկ. Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ դպիրք ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս։*

*Եւ դպիրքն ասեն զսրբասացութիւնն, ըստ խորհրդոյ աւուրն:*

**ՍՐԲԱՍԱՑՈՒԹԻՒՆՔ**

Ծննդեան, Աւետեաց, Աստուածածնի։ Բազմութիւնք հրեշտակաց, եւ զաւրաց երկնաւորաց իջեալ ի յերկնից ընդ միածին Թագաւորին։ Ոյք երգէին եւ ասէին, սա է որդին աստուծոյ։ Ամենեքեան ասասցուք, ուրախ լերուք երկինք, եւ ցնծասցեն հիմունք աշխարհի. զի Աստուածն յաւիտենական ի յերկրի երեւեցաւ, եւ ընդ մարդկան շրջեցաւ, զի կեցուսցէ զանձինս մեր։ — Մեծի Հինգշաբթի։ Որ վերանստիս ի կառս հրանիւթս քառակերպեանս անճառելի Բանդ Աստուած։ Այսաւր իջեալ ի յերկնայնոցն վասն քո արարածոցս, յանձն առեր բազմիլ ընդ աշակերտսն։ Եւ սերովբէքն եւ քերովբէքն հիացեալ զարմանային. եւ պետութիւնք վերին զաւրացն սքանչացեալ աղաղակէին ասելով. սուրբ, սուրբ, սուրբ, տէր զաւրութեանց։ — Ցինանցն։ Ո՞վ է որպէս տէր Աստուած մեր, խաչեցաւ վասն մեր, Թաղեցաւ,

---

բեւոյթ» (a աներեւոյթ) երգեն„ եւն։ — Զարմանք է որ j թէ՛ “Մէ՛ օ»„ եւ թէ՛ “Մարմն„ եւն կտորներս փոխադրած է այլուր, այսինքն Ցիշելեաց ժամանակ (տես անդ), հետեւելով անշուշտ $R^2$ի խրատագրին վերաբերութենէ ետքը. (հմմտ. տող 760)։ ‖697–699 “Սաղմոս ասացէք„ եւն՝ ունին ամբողջ ACEGHI$^2$MN$^2$ եւ abeg. թէ սոսր եւ թէ Սրբասացութեան խրատագրին մասին տես վերը Հատ. ԺԵ սկիզբն։

Սրբասացութիւնք» Լիակատար կը գրեն ձեռագիրներէն միայն B եւ J եւ Դպրութիւնքն՝ a—c եւ g—q, եւ տպագիրք $R^2V^2$stv. Ամէնքը Սրբասացութեանց կարգը վերը դրուածին պէս ունին. միայն Ja սա կարգաւ՝ Ծննդեան, Ցինանց, Կիրակէի, Պահոց, Մարտիրոսաց, Աւագ Եշ. եւ “Ոյք զքերովբէից.„ քիչ տարբեր է m՝ Ծնն., Ցին., Կիր., Մարգ., Մարտ. եւ “Ոյք զքերովբ.„։ Միայն թէ Jaի պէս նաեւ jklnopq եւ v ալ նախ “Մարտիրոսացն„ ունին, յետոյ “Պահոց„ եւ ապա “Աւագելոց„ Սրբասացութիւնքն։ Bի կարգը տես էջ 569։ — Խրատագիրն՝ “Եւ դպիրքն եղանակեն զսրբասացութիւնն ըստ խորհրդոյ աւուրն„ ունի տպագիրքն $R^2$stv եւ b։ J չունի խրատագիր մը. I$^2$ “Սրբասացութեններ կարգաւ„ (= gl.) լոկ “Սրբասացութեններ„ ունին՝ np, իսկ koq “Սրբասացութիւնք կարգաւ„. j՝ “Եւ ասի սրբասացութիւն ըստ աւուրն խորհրդեան„ (ըստ 22. տես Հատ. ԺԵ սկիզբն.) c՝ “Երգեցմունք պատարագի. Սրբասացութիւն.„ e՝ “Սրբասացութիւնք. Ծննդեան„ եւն։ ‖701–708 Ja “Սրբասացութիւն Ծննդեան.„ m չունի խորագիր. begkopq լոկ “Ծննդեան.„ իսկ j “Ծննդեան, Տեառնընդառաջին, փոխման սուրբ Աստուածածնին, Այլակերպութեան եւ այլոց տօնից սուրբ Աստուածածնին.„ v՝ “Ծննդեան, Աւետեաց, Վարդավառին եւ Աստուածածնին.„ (s տպուածին պէս։) — “Իջեալ ի յերկնից„ բառերով կը սկսի B երկար թերթ մ'ունենալէն ետքը (Թղ. 106ա.) տես էջ 569. — kl “եւ ցնծացէ» հիմունք„ եւն. (փխ. “ցնծասցեն„ ըստ այլոց։) ‖706–710 B “Աւ. Եշ.„ (= gn.) c՝ “Աւագ Հինգշաբթի.„ Jae “Եշի.„ b՝ “Մեծի Եշին.„ klpq “Մեծ Եշ.„ միւսները ըստ տպ.։ Միայն j չունի այս Սրբասացութիւնը։ — Միայն e “...քոց արարածոց.„ — $R^2V^2$sv եւ k “...ընդ աշակերտս,„ եւն. — J “եւ պետութիւնքն վերին զաւրացն„ (= $V^2$)։ B “պետութիւնք վերին զաւրաց.„ — Միայն c՝ “սքանչանայէն էր աղաղակէին„ եւն։ ‖711–714 B “Ցինանց, Խչ.„ (այսինքն՝ Ցինանց եւ Խաչի = Jl$^2$ackn.) բայց J բուն՝ “Ցինանց եւ Խաչի աստ.„ իսկ bv “Ցինանց եւ Խաչի եւ Համբարձման

եւ յարեաւ, հաւատարիմ եղեւ աշխարհի, եւ համբարձաւ փառաւք: Եկայք ժողովուրդք, զաւրհնութիւնս ընդ հրեշտակս երգեսցուք Աստուծոյ ասելով, սուրբ, սուրբ, սուրբ ես տէր Աստուած մեր: — Կիւրակէի Եկեղեցւոյ, Հրեշտակաց: Հրեշտակային կարգաւորութեամբ լցեր Աստուած զքո սուրբ զեկեղեցի: Հազարք հազարաց հրեշտակապետք կան առաջի քո, եւ բիւրք բիւրոց հրեշտակք պաշտեն զքեզ տէր: Եւ ի մարդկանէ հաճեցար ընդունել զաւրհնութիւնս ձայնիւ խորհրդականաւ, սուրբ, սուրբ, սուրբ, տէր զաւրութեանց: — Մարտիրոսաց: Սրբութիւն սրբոց՝ մեծ ես եւ ահաւոր, եւ զինուորութիւնք հրեշտակաց աւրհնեն զքեզ, եւ ասեն. փառք ի բարձունս աստուծոյ, եւ յերկիր խաղաղութիւն: — Պահոց, Ննջեցելոց: Վասն յիշատակի հանգուցելոցն ընկալ Հայր սուրբ մարդասէր զպատարագս, եւ համարեա զհոգիս նոցա ի թիւ սրբոց քոց՝ յարքայութեանդ երկնից: Մանաւանդ զի հաւատով մատուցուք զպատարագս, հաշտեսցի աստուածութիւնդ, եւ հանգուսցէ զհոգիս նոցա: — Մարգարէից, Առաքելոց, Հայրապետաց: Ամենակալ ես տէր զաւրութեանց, որ թագաւորդ ես յաւիտենից, որ նստիսդ յերկնից ի յերկինս, եւ լոյս ծագես յարարածս քո: Որ խոնար-

---

զայս աւուր." երեքը՝ (Ցին., Խչ. Հմբ.) ունին նաեւ lmoq, իսկ j "Ցորոնեան, Համբարձման, Խաչի." — BJabgjklnopq "հաւատարիմ եղեւ յաշխարհի." միւսները (հմմտ. $R^2V^2$t) "հաւատարիմ եղեւ աշխարհի" են: — J "եւ համբարձար փառօք" են: — $BI^2$bcgmnop "զօրհնութիւնս ընդ հրեշտակս" են (= $R^2$sv.) իսկ j "զօրհնութիւն" են. lkq "աւրհնութիւնս" են. Ja "օրհնութիւն ընդ հրեշտակս" են (= $V^2$t): — Ամէնքը "...ընդ հրեշտակս երգեսցուք Աստուծոյ ասելով" են (= նաեւ $V^2$t են.) միայն $R^2$ կամ Բարսեղեան՝ "...երգեսցուք նմա ասելով" են: ‖714—718 "Եկեղեցւոյ" չունին $I^2$m. իսկ "Հրեշտակաց" չունին Ja՝ "Եկեղեցւոյ եւ Կիր." (նոյնպէս g "Եկեղ. Կիւրկ." klnopq "Կիր. Եկեղ." եւ e "Կիրակիքն ամեն զայս." եւ j՝ "Կիրակի եւ Հրեշտակաց եւ եկեղեցո եւ այլ աւր:") Տպագիրը մեր դրածին պէս, նաեւ s, միայն v՝ "Կիւրակէի, Եկեղեցւոյ, Տաղաւարի եւ Հրեշտակաց:" — B "...հրեշտակապետք կոյս առաջի քո" են. — $I^2$bgklnopq "բիւրք բիւրոց հրեշտակք" են. (այլ ըստ Տպ. "բիւրուց". = նաեւ sv) իսկ k "բիւրք բիւրուց հրեշտակացն պաշտեն" են. — Միայն b (= v) "...հաճեցար ընդունել" են. — $I^2$Jabeklmnopq "...ընդունել զօրհնութիւն ձայնիւ" են (= $R^2$ եւ v. այլ եւ $V^2$st "զօրհնութիւնս" են.) — $R^2$ եւ k չեն գրած վերջը "սուրբ, սուրբ" են՝ իբրեւ ծանօթ. (k կը գրէ՝ "...խորհրդականաւ. Սբ. երրորդ է.") ‖719—721 ինչպէս բանք հոս նախ "Պահոց" մասը կը դնեն շատերը (Jaejklnpq եւ v): — Խորագիրն՝ e "Մարտիրոսաց եւ կուսանաց օրերն զայս ասա." j՝ "Հայրապետաց, մարտիրոսաց եւ այլ սրբոց աւր այս սրբասացութիւնս." — k "Սրբութիւն սրբոց" են. — kn "զինուորութիւնք հրեշտակացն օրհնեն" են (= v.) — be "եւ երկիր խաղաղութիւն" (=s): ‖721—725 B չունի Պահոցն եւ յաջորդ Մարգարէից են Սրբասացութիւնքն, այլ ասոնց տեղ "Ննջեցելոցն" (տես յետոյ.) — Խորագիրն՝ $I^2$agklnpq միայն "Պահոց". b "Պահոց, Ննջեցելոց" (= $R^2V^2$stv.) դարձեալ c՝ "Ննջեցելոց եւ պահոց." j՝ "Պահոց աւուրն աւր ննջեցելոց." e՝ "Պահոց օրերն զայս ասեն." — J "վասն յիշատակի հանգուցելոց" են. — kln "հաշտեսցի աստուածութիւնն." (փխ. "աստուածութիւնդ." ըստ այլոց): ‖725—731 Ja "Սրբասացութիւն Առաքելոց, Մարգարէից, Հայրապետաց, Մարտիրոսաց." $I^1$q չունին խորագիր. m "Առ. Հր." (n լոկ "Առ." եւ j "Առաքելոց.") c՝ "Առաքելոց, հայրապետաց, մարգարէից." իսկ be են ըստ Տպ. (միայն e կը յաւելու "...զայս ասա:") Այս Սրբասացութիւնս չունին B եւ gklp: — Միայն m՝ "...որ թագաւոր

*Հութեամբ իջեր ի յերկիր, քեզ պատարագս մատուցանեմք: Եւ սուրբ զանունդ քո փառաւորեմք տէր որ պսակիչդ ես քոց սրբոց առաքելոց: Վասն զի սոքա են մեզ բարեխաւս տէր ամենակալ ի քում արքայութեանդ:*

*Եւ ապա եղանակեսցեն.* Որք *զքերովբէիցն, եւն:* [Որք *զքերովբէիցն խորհրդաբար կերպարանիմք զխորհուրդս, եւ կենդանարար* Երրորդութեանն *զերեքսրբեան աւրհնութիւնս մատուցանեմք, զամենայն կենցաղականս ի բաց*

---

*ես„ եւն.* — Jaejnoq *եւ* sv *"որ նստիս յերկնից„ եւն.* — J *"նստիս ի յերկինս երկնից եւ լոյս ծագես„ եւն.* a' *"նստիս ի յերկինս ի յերկրի եւ լոյս ծագես„ եւն.* en *"նստիս յերկինս ի յերկին'ց եւ լոյս ծագես„ եւն* (e *"ծագես.„*) m' *"որ նստի յերկինս յերկնից„ եւն.* q *ալ "յերկինս երկնից„ եւն.* — Jaemn *"որ խոնարհութեամբ իջեր ի յերկնից, քեզ„ եւն (փխ. "ի յերկիր„) — Բարսեղեան* (R²) *"...զքեզ պատարագս մատուցանեմք„, զոր ունի* C *ալ, այլք՝ "քեզ պատարագս մատուցանեմք„ (= նաեւ* V²t *եւն.)* — o *"եւ սուրբ զանուն քո„ եւն: — Ամէնքը "պսակիչդ ես սրբոց առաքելոց„* (gm *"առաքելոցն.„* s' *"առաքելոցս.„) միայն* iv *եւ* t *"սրբոց քոց այս անուն„ (փխ. յատուկ "առաքելոց.„)* — Jajmo *"ի քում յարքայութեանդ:„ — Ընդ որ* kl *չունին՝ ուրիշ քանի մ'օրինակաց հետ՝ Սրբասացութիւնս. արդ* kl *կը կցեն հոս սոսր տեղ. "Աւէ տաւնից տէրունի.* (k *"Ծննդեան եւ զատկին սաս՝ սուրբ Աստուածն.) Սուրբ Աստուած, սուրբ ես Հզօր, սուրբ ես անմահ որ յայտնեցար ողորմեա մեզ: Գ կրկնէ,* (l *Երիցս կրկնեա:) Որ յարեար ի մեռելոց, ողորմեա: Որ յայտնեց.:„ Անկէ ետքը՝ "Յառաջ բերելոյ խորհրդոյն. Սրկ. Մի ոք յերեխայից, մի՛ ոք: Դպ. Մարմին եւն. Որք ըստ քերովբէից եւն: Քրիստոս ի մէջ մեր„ եւն:* ‖731 V² *աւկէ մինչեւ տող 736 չունի.* J *Սրբասացութեանց (որուն մէջ նաեւ "Որք զքերովբէից„) կը կցէ ԺԶ հատուածը (= X.) Տարբեր կարգաւ ունին նաեւ* GK *եւ* I², *որոնք "Մարմին տէրունական„ տաղին կը կցեն վերաբերութեան կարգը (տող 738 եւն) եւ յետոյ նախընթաց խրատագիրը (տես վարը նոյն տեղին:)* N² *այսպէս ունի* (DF *տես վերն.) "Եւ սաի Սրբասացութիւն ըստ պատշաճի աւուրն: Իսկ ի տէրունական տօնս, սրկ. լուցանէ մոմեղէն եւ բուրվառ զոյգ առաջի եւ զկնի վերաբերեն զսուրբ նուէրն եւ զգուշութեամբ ի սեղանն շուրջ ածէ, եւ դպիրքն եղանակեն. Որք զքերովբէիցն, եւն: Իսկ յորժամ դպիրքն եղանակեն, քհ. խոնարհի առաջի սրբոյ սեղանոյն եւ խոնարհաբար սաէ զաղաւթս, զի ի միասին աւարտեսցին. Ոչ ոք„ եւն (Հտծ. ԺԶ): — Միւս ձեռագիրք ընդհանրապէս եւ ամէն տպագիրք ունին միայն սոսկ "Եւ ապա եղանակեսցեն. Որք ըստ քերովբէիցն„ այսչափ, առանց ամբողջական տաղին:* A' *"Եւ երգեն զՈրք զքերովբէիցն. եւ ի սարկաւագացն„ եւն (տող 736.)* B *տես քիչ մ'եաքը.* C' *"Դպիրքն եղանակեն. Որք ըստ քերովբէիցն. եւ ի սարկաւագացն„ եւն (=* O *"Եւ դպիրքն„ եւն.)* DF *տես վերն.* EH' *"Եւ եղանակեն զքերովբէիցն խոր. եւ ի սարկաւագայն„ եւն.* I *"Եւ եղանակեն դպիրքն. Որք զքերով. որպէս եւ գրեալ է ի խրատք ցուցակին.„* (I² *տես վարը՝ վերաբերութիւն.)* MN *"Եւ եղանակեն* (N *չունի երկու բառս.) Որք զքերովբէի. եւ սարկաւագացն վերաբերի„ եւն: Տպագիրներէն* PQ *այսպէս են հոս. "Եւ դան խնկելով ի սուրբ խորհուրդն. Սրկ. Յարեաւ եհար զխո.: Դպ. Եւ ցնծա նա որպէս հսկ.: Ապա սարկաւագայն„ եւն, ուստի վերաբերութիւնը նշանակելով: — Փակագծեալ (տող 731—735) տաղն՝ որ Նախասրբելոյ Պատարագէն է, չեն գտներ ամբողջ բոլոր ՏՊ. եւ վերյիշեալ ՁՁ. եւ շատ ՁԿ, այլ վերաբերութեան մէջ տող առ տող (տես տող 739—760): Յատուկ երբեւ զատ տաղ ունին միայն* B *(Պահոց Սրբասացութեան տեղ),* J *(Թղ. 71 Սրբասացութեանց ծայրը խորագրով՝ "վերաբերելով բչոցօք եւ բուրվառ.„) եւ* N², *ինչպէս նաեւ* aklmnopq, *իսկ* g *աս սխալ խորագիրն ալ կցելով սկիզբը՝*

*գնելով զգործ, որպէս զի զԹագաւորն ամենեցուն ընդունիցիմք, եւ հրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգ. ալէլուիա։] Եւ ի սարկաւագացն վերաբերցի սրբազան հացն եւ աւրհնութեան բաժակն ի սուրբ սեղանն:*

## ԿԱՐԳ ՎԵՐԱԲԵՐՈՒԹԵԱՆ

Քհ. Տէր Աստուած աւրհնեսցէ զամենեսեան։ — Սրկ. Սաղմոս ասացէք տեառն։ — Ցօյնծամ դղէրծն Երքեն ղըրճօօօցօօբէօնն ըօթ խօրհրդօյ օօօօըն՝ հօնքնեօլ։ Սրկ. Մի՛ ոք յերեխայից։ — Դպ. Մարմին տէրունական, եւ արիւն

---

"Տէօօն Նէրօեօէ օօօցեօլ Հօյօց հօՐօղէհօօէ Կլօյեցօօյ. Որք ըստ քրովբէիցն" եւն, առկէ յառաջ ունենալով "Մարմին տէրունական" տողը։ — Մանրամասնութեանց մէջ՝ agklnpq "Որք ըստ քերովբէիցն" եւն. — "զխորհուրդս" չունին BJN² եւ նաեւ միւսները. — նոյն agklnpq "Երրորդութեան." — N² "զերեքսրբեան աւրհնութիւն" եւն. — N² "զամենայն զկենցաղականս ի բաց" եւն։ — BJN² եւն "զգործ", միայն k "զգործս." — Ամէնքն "Որպէս զի" եւն. միայն B "Որ զի" եւն. — Japq "եւ ըստ հրեշտակացն հանդիսապէս" եւն։ Տես վերաբերութիւնն։ ‖736–737 ACEGHIKM "վերաբերի. (փխ. "վերաբերցի"։) GK վերաբերութեան ձայնը՝ "Եւ ի սարկաւագացն վերաբերի սուրբ խորհուրդն ի սուրբ սեղանն." (յետոյ Հմծ. ԺՁ։) Տպագիրներէն PQ "Եւ սարկաւագացն վերաբերեցի (P վերաբերիցեն) սրբազան" եւն։ — Բոլոր 22 "օօրհնօօբեօն (E աւրհնութեամբ) բաժակն" եւն, միայն M "եւ օնմօհօօօբեօն բաժակն" (= OPQS,) միւսներն ըստ մզ.։ ‖738–740 Վերաբերութեան կարգն ունին միայն GKI² եւ beg ու տպագիրք Դպրութեան (R'V²stv.) GK այսպէս ամբողջը ՝Դպ. Մարմին տէրունական, եւն։ Սրկ. Ցարեւու եհար զխորան իւր։ Դպ. Եղանակեն. Որք զքրովբէիցն (K զքրովբէից) խորհրդաբար կերպարանիմք։ Սղմ. Ճանապարհ արարէք։ Դպ. Եւ կենդանարար Երրորդութեանդ զերեքսրբեան աւրհնութիւնս մատուցանեմք։ Սղմ. Աստուած ի հարաւոյ եկ.։ Դպ. Զամենայն զկենցաղականս ի բաց դնելով զգործս։ Որպէս զի զԹագաւորն ամենեցուն ընդունիցիմք։ Եւ զհրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգ։ Սղմ. Համբարձէք իշխանք։ Դպ. Ո՞վ է սա Թագաւոր փառաց։ Սրկ. Սա ինքն է։ Դպ. Ալէլուիա. (K չունի վերջինս։) Եւ ի սարկաւագացն վերաբերի սուրբ խորհուրդն ի սուրբ սեղանն։ Եւ մինչ նոքա երգեն" եւն (տես Հմծ. ԺՁ։) — I² ալ քիչ մը տարբեր, այսպէս. "Դպ. Մարմին, եւն։ Եօ յօրծօմ ղօօօրբ խօրհօօրդն օօնօօն է խօրհրդօնոցեն, յօօօՉ ծօյլէ օրհն. ծղօցօօծն Եօ բօօրվօօօօ Եօ օՄնօյն ղօրթէօծ Եօ բօրՅր Յօյնէօ թօլէ ղօյօ թօօն օօղմօօն է ըմօն. Ցարեւու եհար զխորան իւր եւ ինքն որպէս փեսայ, զի ելանէ յառագաստէ իւրմէ. եւ ցնծա նա որպէս հսկայ ընթանալ զճանապարհս իւր։ Դղէրծն Եղօնօհէն Եօ օօէն. Որք զքրովբէիցն խորհրդաբար կերպարանիմք։ Եօթօն յօլէօնէյց հօղմ Եօ օրհն. Յօյնէ. Ճանապարհ արարէք յայնմիկ, որ նստի յերկինս երկնից ընդ արեւելս։ Եօ դղէրծն օխօօնէն բօրՅր Յօյնէօ. Եւ կենդանարար Երրորդութեան զերեքսրբեան աւրհնութիւնս մատուցանեմք։ Եօ թօն է ծօրօօօհօղմ, օրհն. Յօյնէ. Աստուած ի հարաւոյ եկեսցէ եւ սուրբն ի Փառան լեռնէ։ Եօ դղէրծն. Զամենայն զկենցաղականս ի բաց դնելով զգործս. որպէս զի զԹագաւորն ամենեցուն ընդունիցիմք. եւ զհրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգս. (Սրկ.) Համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, եւ մտցէ Թագաւոր փառաց։ Իօհ Եղխօհօղօօն հօմ օվ օծ օր ղղօօօօրօթն մօթօօցօնէ՝ թօյ ըթօ օօօՉ Եօ հօրցօնէ ղօյօ բնլ օօ նօյնն. Ո՞վ է սա Թագաւոր փառաց տէր։ Սծ. Համբարձէք իշխանք։ Դպ. Ո՞վ է սա Թագաւոր փառաց տէր զօրու.։ Սծ. Սա ինքն է Թագաւոր փառաց։ Եօ Եղխօհօղօօն Երէրդօթէ Եօ օօնօօ է է Յեօօցն. ղօյօ օօէ օօ է դօօթօ օբօօն. Աւրհնեալ եկեալ անուամբ տեառն։ Եօ հօնէ է օօօրբ օեղօնն։ Դպ. Ալէլուիա։" — Մենք դրինք բնագիրն ըստ V²

935 *ցած. Ամէն։ — Սարկաւ. Աւրհնեա տէր։ — Եւ քահանայն ասասցէ ի ձայն. Որպէս զի եղիցի սա ամենեցուն մեզ մերձեցելոցս յանդատապարտութիւն, ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։ — Դպիրքն. Հոգի Աստուծոյ, որ զփառակցի քո խորհուրդ իջեալ ի յերկնից կատարես ի ձեռս մեր, հեղմամբ արեան սորա, աղաչեմք զքեզ՝ հանգո զհոգիս մեր ննջեցելոցն։*

---

աղաչէր„ ելն։ — C հոս ալ չունի "եւ փրկչին„ բառերը„։ — J "...Յիսուսի Քրիստոսի. Գ ասս. փոխարկելով„ ելն։ Նոյն կարգի GK "...Յիսուսի Քրիստոսի։ Երիցս կրկնէ ի վերայ հացին եւ բաժակին, եւ աւրհնէ զհացն եւ զբաժակն ասելով. Որով զհացս † եւ զգինիս † աւրհնեալ։ Եւ սրկն. ասէ. Ամէն։ Եւ քհն. առցէ զծածկոյթն ի ձեռն, եւ ի ծածկելն ասէ այսպէս. Փոխարկելով Հոգւովդ քո սրբով„ ելն։ N տես քիչ մ'ետքը։ Այս "փոխարկելով„ ելն ուրոյն աղօթամասն ունին նաեւ BF$N^2$ (տես վերն եւ տող 930.) իսկ D չունի ամենեւին։ — 22. (CEGK$N^2$ ելն) "փոխարկելով Հոգւովդ քո սրբով„ (ՏՊ "...քով...։„) J եւ $N^2$ չունին "քո„ կամ "քով։„ ‖934ff Ասկէ մինչեւ Հատածիս վերջը շատ պէսպէս են 22։ BDF տես վերն, եւ $N^2$ տես տող 930։ ACEM "Երեք անգամ կրկնեա (M կրկնէ, A Երեք անգամ եւ Սրկ. ելն) զաղաւթս, եւ սրկն. ի ցած (C ասէ). Ամէն։ Եւ քհն. այնուհետեւ ոչ բարձրագոյն, այլ խոնարհագոյն տարածեալ (C Եւ այնուհետեւ քհն. խոնարհագոյն տարածելով) զձեռսն (E զձեռն) աղաւթէ ի ծածուկ. Որպէս զի„ ելն։ N ալ այսպէս ունի յետոյ, բայց ո՛չ. հոս, այլ GKPQի հետ քիչ մ'ետքը (տես տող 941,) հոս կ'ըսէ "Սրկ. Ամէն։ Քհ. փոխարկելով Հոգ.։ Ի ձայն. Որպէս զի„ ելն։ H՝ "Եւ ապա մարմին եւ արիւն կատարի Քրիստոսի։ Գ անգամ կրկնէ զաղաւթս։ Եւ սրկն. ի ցած ասէ. Ամէն աւրհնեա Տէր։ Եւ քհն. ոչ բարձր քան զսկիհն տարածեալ զձեռս, այլ ցած, եւ աղաւթէ ի ծածուկ ասելով. Որպէս զի„ ելն։ GK այսպէս. "(K Գ անգամ զաղօթսն ասա.) Եւ ապա մարմին եւ արիւն կատարի Քրիստոսի։ (G. Գ. անգամ կրկնէ զաղաւթս։) Եւ սրկ. ի ցած ասէ. Ամէն աւրհնեա Տէր։ Եւ քհն. ոչ բարձր քան զսկիհն տարածեալ զձեռս, այլ՝ ցած, եւ աղաւթէ ի ծածուկ ասելով. Որպէս զի„ ելն։ I "Եւ Գ. անգամ կրկնէ զաղաւթս. եւ սրկն. ի ցած. Ամէն։ Եւ քհն. այնուհետեւ ոչ բարձրագոյն այլ խոնարհագոյն քան զընծայսն տարածեալ զձեռն աղաւթէ ի ծածուկ, զքաւղէ եւ ասէ ի ձայն, խնկարկէ ասելով։ Որպէս զի„ ելն։ J այս ամենուն տեղ պարզ "Գ. ասա։ Ի ձայն. Որպէս զի„ ելն։ Տպագիրներէն՝ PQ "Երիցս կրկնեսցէ։ Ապա ասասցէ ի ձայն. Որպէս զի„ ելն։ OS "Երիցս անգամ կրկնեսցէ (O Երեք անգամ կրկնէ) զաղօթս։ Եւ սրկն. ի ցած. Ամէն։ Եւ քհն. այնուհետեւ ո՛չ բարձրագոյն, այլ խոնարհագոյն քան զընծայսն տարածեալ զձեռսն՝ աղօթեսցէ (O աղօթէ) ի ծածուկ. Որպէս զի„ ելն։ Միւս տպագիրք (ՏԱ) մեր գրածին պէս։ ‖936 TW ելն "Որպէս զի սա եղիցի„ ելն։ — GK "...ամենեցուն մեզ †„ ելն։ — J "...մերձեցելոցս անդատապարտութիւն„ ելն։ ‖937—938 "Հոգի Աստուծոյ„ տողը չեն գրեր տպագիր խորհրդատետրներն, ձեռագիրներէն ալ չունին ACEMN, իսկ BDF եւ j ունին թէեւ՝ բայց ուրիշ տեղ, այսինքն "Ըստ ամենայնի եւ յղ. ամենեցուն„ ըսելէն ետքը (տես տող 1022—1023։) $N^2$ ալ ուրիշ տեղ ունէր, ինչպէս նշանակեցինք ի տող 930։ Վերջապէս նաեւ GK քիչ մ'ետքը գրած են տողս, այսինքն "Ընդ սրս„ ելն վերաձայնելէն ետքը (տես տող 954)։ Հոս ունին H$I^2$J եւ գրչութիւնք abegklmnoq եւ տպագիրք ($R^2V^2$stv)։ — Խրատագիրն ելն՝ H ունի "Սրկ. Ամէն աւրհնեա Տէր։ Դպ. Հոգի Աստուծոյ...։ Սրկ. Ամէն աւրհնեա տէր։ Եւ քհն.„ ելն. (Հտծ. ԻԳ։) Միւսներն՝ որ այլուր ունին, տես իրենց տեղը։ Դպրութիւնք առ հասարակ՝ "Դպ.„։ — Միայն kp "...զփառակցին քո„ ելն. — H$I^2$GK$N^2$ եւ mnopq "զփառակցի քո խորհուրդ„ ելն. միւսները "...զխորհուրդ„ ըստ տպագրաց։ — $N^2$ "...կատարեսցի ի ձեռս մեր„ ելն. —

ԽՆԴՐՈՒԱԾՔ ԵՒ ՔԱՐՈԶՔ ՑԻՇԱՏԱԿԱՑ

ԻԳ. — Եւ ապա տարածեալ զձեռս աղաւթեաց ի ծածուկ. Սովաւ շնորհեա զսէր, զհաստատութիւն եւ զըղձալի զխաղաղութիւն ամենայն աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց, քահանայից, սարկաւագաց, թագաւորաց աշխարհի, իշխանաց, ժողովրդոց, ճանապարհորդելոց, նաւելոց, կալելոց, վտանգելոց, աշխատելոց, եւ որք ի պատերազմունս բարբարոսաց: — Սովաւ եւ աւդոց շնորհեա զբարեխառնութիւն, եւ անդոց զպտղաբերութիւն, եւ ախտացելոց ի պէսպէս ցաւս փութապէս զառողջութիւն: — Սովաւ հանգո զամենեսեան յառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն, [զնախահարս, զհայրապետս, զմարգարէս, զառաքեալս, զվկայեալս,]

---

N[2] "հեղմամբ արեամբ նորա" (նաեւ akl "հեղմամբ յարեամբ" եւն.) — DGHI[2]JN[2] եւ aegjklopq "հեղմամբ արեան (կամ արեամբ) նորա" (փխ. "սորա" ըստ այլոց եւ այլն.) — JN[2] "մեր ննջեցելոց":

ԻԳ. ‖[941] Խրատագիրս չունին, այլ "Որպէս զի" եւն աղօթքին կը կցեն այս ալ՝ ACEIM (= OS տպագիրներէն:) BF տես վերն, եւ N[2] ի տողն 930. ընդհանրապէս D կիսատ է հոս գրելով "Սրկն. Ամէն: Ցայսմ տեղւոջ քհն. երիցս երկրպագէ զսեղանն եւ այսուհետեւ զձե" (թուղթ ինկած՝ Թղ. 133էն ետքն. որով "Սովաւ" եւն աղօթքն ալ կը պակսի:) J "Եւ մինչ դպ. եղանակեն, քհ. զաղօթս ասէ ի ծածուկ. Սովաւ" եւն: GK "Եւ քհն. երիցս երկրպագէ եւ համբուրէ զսեղանն, եւ այսուհետեւ զձեռս հաւասար նուիրացն տարածէ, եւ այլ մի իշխեսցէ կնքել զընծայսն, այլ իբրեւ Աստուծոյ զգուշասցի, եւ զհայցուածս ի նմանէ խնդրեսցէ արտասուօք, եւ խոնարհի եւ ասէ զաղօթս ի ծածուկ. Սովաւ" եւն: Այս խրատագիրը, զոր վերը (տող 934—936) ունէին ուրիշները, հոս ունին նաեւ N եւ տպագիրներէն PQ "Եւ քհն. այսուհետեւ ոչ բարձրագոյն քան զընծայսն զձեռսն իւր տարածեալ, այլ խոնարհագոյն: Եւ զաչսն ի նոյն յառեալ աղօթեսցէ ի ծածուկ. Սովաւ" եւն: Նոյնպիսի նաեւ H՝ "Եւ քհն. երիցս երկիր պագանէ եւ համբուրէ զսեղանն: Եւ այսուհետեւ զձեռս հաւասար նուիրացն տարածէ: Եւ այլ մի իշխեսցէ կնքել զընծայսն. այլ իբրեւ Աստուծոյ զգուշասցի. եւ զհայցուածս ի նմանէ խնդրեսցէ արտասուօք: Եւ խոնարհի եւ ասէ զաղօթ ի ծածուկ. Սովաւ" եւն: Տես տող 934—935: ‖[942] N[2] "Սովաւ շնորհեսջիր զսէր" եւն. E "Սովաւ շնորհեա զսէրս, հաստատութիւն" եւն: — B "եւ զըղձալիս զխաղաղութիւն" եւն, K "եւ զըղձալիս խաղաղութիւն" եւն: ‖[944] B "թագաւորաց աշխարհի, ժողովրդոց" եւն (չունի բուն "իշխանաց", որ յետոյ գրուած է նոր ձեռքէ): Միւս ձեռագիրք կը տրոհեն՝ "թագաւորաց, աշխարհի իշխանաց" եւն. N[2] "թագաւորաց քրիստոնէից, աշխարհի իշխանաց" եւն: — EFGHJK "ճանապարհորդաց" (փխ. "ճանապարհորդելոց" ինչպէս ունին միւսները ABCDIMN, եւ ՏՊ.) իսկ N[2] "ճանապարհորդ." կը գրէ: — A չունի "կալելոց, վտանգելոց" բառերը: — K չունի "աշխատելոց" բառը: ‖[946] CN[2] "որք ի պատերազմունս են բարբարոսաց:" — "Անդեաց (փխ. "անդոց") զպտղաբերութիւն" ունին BFGJKN[2], միւսներն ըստ ՏՊ:: ‖[947] N[2] "եւ ողորմեցելոց ի պէսպէս ցաւս" եւն: — BFGJKN[2] "...փութապէս առողջութիւն." (= P.) միւսները (ACDE եւն) եւ միւս ՏՊ "...զառողջութիւն:" ‖[948] BJ "...զամենեսեան զյառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալսն." N[2] "զամենեսեան յառաջագոյն ի Քրիստոս ննջեցեալս" եւն: ‖[949] Փակագծեալը դուրս ձգած է Բարսեղեան (R) եւ անով չունի բոլոր ՏԱ: Ունին ՏԲ եւ ամէն 22 (A—N[2],) եւ այն՝ մեր դրածին պէս ունին ACEGHIJKMNN[2] եւ OPQS. միայն GHJK "զսուրբ հարս" կ'ըսեն փխ. "զնախահարս", N "զնախահարս, զնահապետս" եւն (փխ. "զհայրապետս"), որոնց

զեպիսկոպոսունս, զերիցունս, զսարկաւագունս եւ զբնաւ ուխտ եկեղեցւոյ քում սրբոյ, եւ զամենեսեան որք յաշխարհական կարգէ զարս եւ զկանայս հաւատով վախճանեալս:

*Սրկ.* Աւրհնեա Տէր: — *ՔՀՆ. ի ձայն.* Ընդ որս եւ մեզ այց արասցես բարերար Աստուած աղաչեմք: — *Դպ.* Յիշեա տէր եւ ողորմեա: — *ՔՀ.* Աստուածածնին սրբոյ կուսին Մարիամու, եւ Յովհաննու Մկրտչին, Ստեփաննոսի Նախավկային, եւ ամենայն սրբոց եղիցի, յիշատակ ի սուրբ պատարագս, աղաչեմք: — *Դպ.* Յիշեա տէր եւ ողորմեա.

*Սարկաւագն յաջակողմն սեղանոյն՝ ձեռնամած ասասցէ.* Առաքելոց սրբոց, մարգարէից, վարդապետաց, մարտիրոսաց, եւ ամենայն հայրապետաց

---

պէս BF՝ "զսուրբ հարսն, զհայրապետսն, զառաքեալսն, զմարգարէս, զվկայեալս:" D՝ ընթերցուածք թուղթ ինկած է հոս: ‖951 Ամէն 22 (A—N²) եւ ՏԱ "...ուխտ եկեղեցւոյ քում սրբոյ," միայն OPQS կամ ՏԲ "...եկեղեցւոյ քո սրբոյ": — N² "եւ զամենայն յաշխարհականս" ունի (փխ. "զամենեսեան" ունի:) — Բոլոր 22. (A—N²) "եւ զամենեսեան յաշխարհական կարգէ" եւ չունենալով "որք" բայց թէ ՏԱ եւ թէ ՏԲ "եւ զամենեսեան որք յաշխարհականս" ունի: ‖952 BFGHK "ըհաւատով զվախճանեալս" (BF "զվախճանեալսն.") ACEIJMNN² "...հաւատով զվախճանեալս" (J "...զվախճանեալսն" ըստ BF): ՏԳ. մեր դրածին պէս (միայն S "...զվախճանեալս:" ‖953 Հոս կը յաւելու N² Եւ քհն. մինչդեռ ասէ զաղօթս, դպիրքն եղանակեն եւ ասեն. Հօքէ Աստուածոյ... (տես տող 937.) ՔՀՆ. ասէ ի ձայն. Ընդ որս ունի: Միւս բոլոր 22. լոկ "Ի ձայն. Ընդ որս" (= ՏԳ.) միայն A չունի այս եւ "Ընդ որս... աղաչեմք" աղօթամասն. ուրիշ ձեռքէ մը գրուած է "Ժող. Յիշեա Տէր եւ ող." ուստի A կը կցէր նախնապէս նախընթաց աղօթքին՝ "ՔՀՆ. Աստուածածնին սրբոյ կուսին" ունի: — "Ընդ որս"էն յառաջ "Սրկ. Աւրհնեա Տէր" ունին Դպրութիւնք եւ H. իսկ J "Սրկ. Ամէն. աւրհնեա Տէր:" ‖954 F "...բարերար Տէր (փխ. "Աստուած") աղաչեմք". C "բարերար Աստուած աղաչեմ:" — Հոս կը կցեն GK "Դպ. Հօքէ Աստուածոյ...: Դպ. Յիշեա Տէր եւ ող." (տես տող 937:) — Պարզ "ՔՀ." խորագիր ունին ՏԳ եւ շատ ձեռագիրք (AEMN ունին.) իսկ C "ՔՀՆ. ասէ." BHK "ՔՀՆ. ի ձայն." G "ՔՀՆ. ի ձայն ասէ." F "ՔՀՆ. ի ձայն ասէ զաղօթս:") ‖955 Հոս "Մարիամու" բառով կը սկսի դարձեալ D՝ թղ. 134ա: — "Մկրտչին" յետոյ գրուած է յA. — BDFGJKN² "սրբոյն Ստեփաննոսի" ունին. միւսները (AC ունին) չունին հոս "սրբոյն": ‖956 Միայն X "...նախավկային, եւ սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին, եւ ամենայն սրբոց" ունի: — EHIMN "եղիցի յիշատակ սուրբ պատարագս" ունին, (միւսներն ըստ ՏԳ. "եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս" ունին:) ‖957 G "...աղաչեմ:" — Հոս "Յիշեա տէր եւ ողորմեա" պատասխանէն ետքն ունի J "Մի՛ ով յերախայից, ունի: Մօրմն փէրօնեան, ունի, ունի: Որք հաստատ... Վէրհամբառնամք...: Առաքելոց սրբոց" ունի (վերջինս տես տող 958): ‖958 Խորատագիրն՝ JN չունին "Սրկն." բառն սկիզբը. — D "յառաջակողմն", HM "յաջակողմ." — C "ձեռնամած ասէ." միւսները (ADEIM ունին հոս "ասասցէ:") Ուստի նաեւ D ունի խորատագիրս տպագրաց համեմատ, մինչ BFN² կ'ըսեն աստ տեղ՝ "Սրկն. գայ (N² գնա) յաջակողմն (B յաջակողմն, N² առաջակողմն) սեղանոյն, զդէմս ուղղեալ (F ուղղէ, N² զդէմս ունելով,) ի պատարագն, եւ զձեռս եդեալ ի վերայ սրբոյ սեղանոյն, եւ ասէ (F ասէ ձայնիւ զքարոզն, N² ասէ զքարոզն.) Առաքելոց սրբոց" ունին: Նոյնպէս GK "Սրկն. գնայ յաջակողմն սեղանոյն, զդէմս ուղղեալ ի պատարագն, եւ խնկարկէ շուրջ զսեղանովն, եւ եւ ասէ ձայնիւ բարձր զքարոզս (K զքարոզն.) Առաքելոց" ունին: I² "Սրկն.

*սրբոց, առաքելագործ եպիսկոպոսաց, երիցանց, ուղղափառ սարկաւագաց, եւ ամենայն սրբոց, եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս աղաչեմք։ — Դպիրքն. Յիշեա տէր եւ ողորմեա։*

[Կիրակէից յարութեան ասա զայս: Սարկաւ. *Աւրհնեալ, գովեալ եւ փառաւորեալ, հրաշալի եւ աստուածազարդ յարութեանն Քրիստոսի երկիր պագանեմք։ — Դպիրքն.* **Փառք** *յարութեան քոյ տէր։* — Ի տաւնի Սրբոցն զայս ասա:] Սարկաւ. *Սուրբ եւ աստուածահաճոյ մարգարէին, կամ հայրապետին, կամ առաքելոյն, կամ մարտիրոսին,* (այս անուն.) *զորոյ այսաւր*

---

յայն դեհն գնայ եւ ձեռնամած աւէ։" — K քարոզութիւնքս (տող 958—990) ամբողջ չի գրեր, այլ միայն իւրաքանչիւր տան սկզբնաւորութիւնքն կամ առաջին բառերը։ I ալ "Առաքելոց սրբոց, մարգա. եւ ... է հետ." (I$^2$ ի հարկէ ամբողջ)։ Նոյնպէս այսչափ միայն կամ սկիզբը կը նշանակեն տպագիր խորհրդատետրները։ Լիակատար ունին ձեռագիրքս ABCDEFGHIJMNN$^2$ եւ Դպրութիւնք I$^2$abcegj եւ տպագիրք R$^2$V$^2$stv. միւս դպրութիւնք (այսպէս m եւն) մէկ քանի բառ։ — B "Առաքելոցս սրբոց" եւն։ ||959 A "Առաքելոց սրբոց, վարդապետաց, մարգարէից" եւն (բառերու կարգը տարբեր)։ ||961 F "եւ ամենայն սրբոցն" եւն։ — MN "եղիցի յիշատակ սուրբ պատարագս" եւն։ — "Դպիրքն. Յիշեա Տէր եւ ողորմեա" ունին Դպրութիւնք (g չունի "եւ ողորմեա") եւ BDFHI$^2$JN. միւսները չեն նշանակեր։ ||963—965 Փակագծեալը, զոր ունին ամէն տպագիր Դպրութիւնք (R$^2$V$^2$stv.) ձեռագիրներէն ունին միայն FHI$^2$JN$^2$ եւ abcegjm. չունին ABCDEGKMN, որոնք տարբ տեղ յաջորդ "Մարտիրոսացն" ունին։ — Ունեցող ձեռագիրք ալ շատ պէսպէս են։ Խորատագիրք չունին Jage եւն. (b "Կիրակէից." c "Յարութեան"։) — F այսպէս ունի՝ "Սուրբ եւ փառաւորեալ եւ աստուածահրաշ յայտնութեանդ երկիրպագանեմք։ Դպն. Փառք յայտնութեան քո տէր։ Մարտիրոսաց" եւն (տես յաջորդը)։ Նոյն կարգէ N$^2$ շատ տարբեր կարգաւ ունի այս եւ յաջորդն՝ "Սուրբ եւ փառաւորեալ եւ աստուածահաճոյս սրբոյս այս անուն որոյ յայսաւր զյիշատակս կատարեցաք։ Յար—թեան եւ Յայտն—թեան. Աւրհնեալ, գովեալ բարեբանեալ եւ երկիրպագեալ երից երանեալ տիեզերալոյս եւ տիեզերապայծառ հրաշալի եւ հրաշազարդ յարութեանդ երկիրպագանեմք։ Յիշեա։ Առաջնորդացն" եւն։ Ասոր նման են em՝ "Սրկ. Սուրբ եւ փառաւորեալ երից երանեալ տիեզերալոյս (m տիեզերալուր) տիեզերապայծառ սուրբ (m "հրաշալի" փխ. "սուրբ") յարութեանդ երկիր պագանեմք։" I$^2$ "Սուրբ եւ փառաւորեալ աստուածահրաշ յայտնութեանդ երկիրպագանեմք։ Եւ աստուածահաճոյ վկայիցն որոց այսաւր է յիշատակ։ Դպ. Փառք յարութեան, յայտնութեան, տէրութեան քո Տէր։ Դպ. Լուր Տէր եւ ողորմեա։ Առաջնորդացն" եւն։ H՝ "Սուրբ եւ փառաւորեալ աստուածահրաշ յարութեանդ, յայտնութեանդ, համբարձմանդ, տէրութեանդ, գալստեանդ երկիրպագանեմք։ Դպ. Փառք յարութեանդ, յայտնութեանդ, համբարձմանդ, գալստեանդ քո Տէր։ Առաջնորդացն" եւն։ Նաեւ g "Սուրբ եւ փառաւորեալ աստուածահրաշ յարութեանդ երկիրպագանեմք։ Փառք յարութեան քո Տէր։" Մնացեալք տպագրաց կամ մեր դրածին պէս են, բայց Ja "... հրաշալի եւ հրաշազարդ յարութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ երկիրպագանեմք." (c ալ "հրաշազարդ" կ'ըսէ փխ. "աստուածազարդ"։) ||965—966 Խորատագիրն "Ի տօնի սրբոյ" եւն ունին ՑԳ. եւ b. իսկ ձեռագիրք չունին (այսպէս J եւն) կամ պարզ "Մարտիրոսաց." կը նշանակեն (այսպէս cj.) տես յաջորդը։ ||966—968 Այս կտորն ունին ABCDEFGJKMN, միւսները նախընթացին հետ խառն ու տարբեր կարգաւ ունէին (HN$^2$ տես 963—965)։ Դպրութիւններէն ունին այս մասն bcgj. (չունին ae) եւ տպագիրք (R$^2$V$^2$stv.) հոս ալ չափազանց պէսպիսութիւնք

զյիշատակն կատարեցաք, եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս, աղաչեմք։
— Դպիրքն. Յիշեա տէր եւ ողորմեա։

970 *Սարկաւ.* Առաջնորդացն մերոց, եւ առաջին լուսաւորչացն սրբոց, Թադէոսի, եւ Բարդուղիմէոսի առաքելոցն, եւ Գրիգորի Լուսաւորչին, Արիստակիսի, Վրթանիսի, Յուսկանն, եւ Գրիգորիսի, Ներսիսի, Սահակայ, Դանիելի, եւ Խադթայ, Մեսրոպայ Վարդապետին, եւ Գրիգորի Նարեկացւոյն, եւ Ներ-

---

սէսի։ ACEGKMN այսպէս. "Սուրբ եւ (K փառաւորեալ եւ) աստուածահաճոյ հայրապետին, առաքելոյն, մարգարէին (N չունի), մարտիրոսին (M եւ) ամսոյն օրէց, զորոց (N որոց) այսաւր զյիշատակն (A զյիշատակս) կատարեցաք.„ այսպէս նաեւ b եւ sv. իսկ BD "Սուրբ եւ փառաւորեալ սրբոց, (B յիշեղանան), զորոց այսաւր զյիշատակն (D զյիշատակս) կատարեցաք, եղիցի յիշա.։ Առաջնորդացն։„ F "Մարտիրոսաց։ Սուրբ եւ փառաւորեալ եւ աստուածահաճոյ վկայիցն որոց այսաւր է յիշատակ։ Դպ. Լուր Տէր եւ ողորմեա։ Առաջնորդացն„ եւն։ N² տես տող 963։ J "Սուրբ եւ փառաւորեալ երիցս երանեալ սրբոց, որոց այսօր է յիշատակ, եղիցի։„ Նման g՝ "Սուրբ եւ աստուածահաճոյ վկայիցն այս անուն, որոց այսաւր զյիշատակն կատարեցաք, եղիցի յիշ.։„ Վերջապէս cj "Մարտիր.։ Բարեխօսութեամբ (c եւ յիշատակաւ) եւ աղօթիւք սրբոցն Ա. որոյ այսօր զյիշատակն կատարեցինք (j որոյ այսօր է յիշատակն կատարեցին), եղի.։„ Տպագիրներէն sv նոյն էին AC եւն ձեռագրաց հետ. R²V²t մեր դրածին պէս, (R²t "...այս անուն, որոյ այսօր„ եւն։) ‖969 "Դպ. Յիշեա„ եւն ունին Դպրութիւնք եւ DJ։ Տես նաեւ նախընթացը։ ‖970 Ասկէ մինչեւ Հատածին վերջը (տող 990) Սարկաւագի քարոզութիւնք չունին ի հարկէ տպագիր խորհրդատետրներն. ունին բոլոր 22 (A – N²) եւ Դպրութիւնք abcej եւ տպագիրք R²V²stv. — Առաջինս I²N²bc ունին քոլորովին համեմատ տպուածին. միւսները տեղ տեղ քանական տարբերութիւններով։ Չենք յիշեր ուղղագրութեան անթիւ պէսպիսութիւնք, օրինակի համար ACEI²MNegv եւն՝ "Թադէոսի.„ DJN² "Թաթէոսի.„ կամ՝ A "Բարթողիմէոսի,„ M "Բարթողոմէոսի,„ C "Բարդօղիմէոսի,„ E "Բարթուղիմէոսի„. FN²ae 'Բարդողիմէոսի,„ bv եւն 'Բարդուղիմէոսի„ եւն. կամ՝ A "Առիստակէսի,„ BD "Առիստագիսի,„ F "Արիստակեսի„, a "Առըստագիսի„ եւն. կամ՝ A "Վրթանիսի„ (= FMegjvs), մինչ BCDJN²b եւն "Վրդանիսի,„ կամ՝ ACFHI²M "Խադայ„, J եւն "Խաթայ„ եւ նմաններ։ ‖971 A "...Բարթողիմէոսի առաքելոցն, Գրիգորիսի„ եւն (չունի "եւ„, զոր չունին նաեւ FJabgj)։ — N² "...Լուսաւորչի„։ ‖972 J "Ուսկանն.„ (= c եւ V² "Ուսկան.„) եւ ER "Յուսկան,„ միւս ամէնը "Յուսկանն։„ — Fv "Ներսեսի.„ A "Ներսիսի„ եւ նմաններ։ ‖973–974 "Դանիելի„ անուամբ B եւ j կը փակեն շարքը՝ "...Դանիելի եւ ամենայն սրբոց լուսաւորչացն, հովուաց„ եւն, չունենալով միւս անունները։ Իսկ a կը կցէ հոս յաւելուածը "...Դանիելի, Խադթայ, Յովհաննու Որոտնեցւոյն եւ Գրիգորի Տաթեւացւոյն, Մեսրոպայ„ եւն։ Այս յաւելուածն ունին քանի մ'ուրիշ ձեռագիրք ալ տարբեր տեղեր մուծուած, այսպէս H "...Նարեկացւոյն, Յովհաննու Որոտնեցւոյն եւ Գրիգորի Տաթեւացւոյն, եւ սրբոց Գրիգորիսեանց եւ Ներսիսեանց եւ ամենայն սրբոց հովուաց„ եւն. b եւ sv "...Ներսիսի Կլայեցւոյն, Յոհաննու Որոտնեցւոյն եւ Գրիգորի եւ Մովսէսի Տաթեւացւոցն, (b եւ Փիլիպպոսի Հաղբատացւոյն), եւ սրբոց Գրիգորիսեանց եւ Ներսիսեանց, հովուաց„ եւն։ Միւսները չունին այս յետամնայ յաւելուածները։ — CFab "Գր. Նարեկացւոյն ...Կլայեցւոյն„. E "...Նարեկացուն„ եւ նմաններ։ ACEHMN չունին "Եւ Ներսէսի Կլայեցւոյն„ անունը, զոր ունին միւս ամէնքը։ ACEGJMN եւ e ունին հոս "...Գրիգորի Նարեկացւոյն, (GJe եւ Ներսիսի Կլայեցւոյն,) եւ սրբոց Գրիգորիսեանցն եւ Ներսիսեանցն, (ACE եւ ամենայն) հովուաց„ եւն. (e "...Գրիգորիսեանց եւ Ներսիսեանց, հովուաց„

սիսի Կլայեցւոյն, եւ ամենայն սրբոց հովուաց, եւ հովուապետացն Հայաստանեայց, եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս աղաչեմք: — Դպիրքն. Յիշեա տէր եւ ողորմեա:

Սարկաւ. Միաբանեցելոց սրբոց, առաքինասէր եւ աստուածուսոյց կրօնաւորացն Պաւղոսի, Անտոնի, Պաւղայ, Մակարայ, Ոնոփրիոսի, աբբայ Մարկոսի, Սրապիոնի, Նեղոսի, Արսենի, Եւագրի, Յոհաննիսեանց, եւ Սիմէոնեանց, սրբոց Ոսկեանց, եւ Սուքիասեանց, եւ ամենայն սրբոց հարց, եւ աշակերտելոց նոցին ընդ տիեզերս, եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս, աղաչեմք: — Դպիրքն. Յիշեա տէր եւ ողորմեա:

Սարկաւ. Թագաւորաց հաւատացելոց սրբոց, Աբգարու, Կոստանդիանոսի, Տրդատայ, եւ Թէոդոսի, եւ ամենայն սուրբ եւ բարեպաշտ թագաւո-

---

եւն. J չունի "Ներսիսեանց.") այս տունն ունին նաեւ sv: ‖974 "Եւ ամենայն սրբոց հովուացն" բառերը չունի N², բայց յետոյ նոր ձեռք մը լուսանցքի վրայ գրեր է. (= b:) ACE "եւ ամենայն հովուաց" եւն (չունին "սրբոց"), իսկ GJMNe չունին "եւ ամենայն սրբոց" բառերը՝ պահելով պարզ "հովուաց". (GN "հովուացն" = H:) Տպուածին պէս են HI²N² եւն: ‖975 ABCDEHNej "Հայաստանեաց." (MFbv եւն "Հայաստանեայց:") ‖976 Դպրաց պատասխանն ունին GHI²JK եւ Դպրութիւնք. չունին ABCFE եւն: ‖977 Հոս ալ տպուածին հետ բոլորովին նոյն են I²g եւն. բայց անունները նոյնպէս պէսպէս ուղղագրութեամբ ունին 22: ‖978–979 B "Անտոնի, Պաւղեայ, Մեսրոպեայ վարդապետին եւ Գրիգորի Նարեկացւոյն, Ոնոփրիոսի" եւն. նոյնպիսի j՝ "...Մակարայ, Մեսրոբայ վարդապետին եւ Գրիգորի Նարեկացւոյն եւ Ներսեսի Կլայեցւոյն, Օնոփրիոսի, աբա Մարկոսի, Նեղոսի, Արսենի, Եւագրի, Յոհաննիսեանց եւ ամենայն սրբոց հարց" եւն: "Ոնոփրիոսի"՝ մեծագոյն մասն, cj "Օնոփրիոսի," b "Օնոփրիոսի", D "Անուփրիոսի" եւ նմաններ: — "Սրապիոնի" չունին ABDE, ունի F եւ միւսները CG եւն: — "Արսէնի" չունի միայն e (A կը գրէ "Արսենի") իսկ C ունէ եղջն այսպէս՝ "...Սրապիոնի, Արսէնի, Եւագրի, Նեղոսի, Պօղոսեայ, Յովհաննիսեանցն եւ Սիմէոնեանցն եւ Սուքիասեանցն սուրբ հարց եւ աշակերտելոց" եւն: "...(Եւագրի,) Պօղոսեայ" կը յաւելուն նաեւ H (Բարսամայ), J, N (Պարսամայ), N² ("Պարսումայ) եւ ab ու տպագիրներէն sv. միւս 22 չունին այս յետոյամուտ յաւելուածը: — A "Յովհաննիսեանցն եւ Սիմէոնեանցն, սրբոց Ոսկեանցն եւ Սուքիասեանցն եւ ամենայն սրբոց հարցն" եւն. (միւսներէն՝ EFGM "Յոհաննիսեանցն," BM "Սիմէոնեանց", EGHF "Սիմէոնեանցն," EGHM "սրբոց Ոսկեանցն եւ Սուքիասեանցն," GM "եւ ամենայն սրբոց հարցն" եւն:) Միայն BN չունին սա բառերը՝ "սրբոց Ոսկեանց եւ Սուքիասեանց", զորոնք ունին միւս ամէնքը, (նաեւ BD): ‖982 Դպրին պատասխանն ունին Դպրութեանց հետ նաեւ GHJ. չունին ADF եւն: ‖983–984 AC եւ e "Թագաւորաց հաւատացելոց, Աբգարու" եւն, որոնք չունին "սրբոց", ըստ տպ. եւ DJa եւն, իսկ BFEGHKMNN² "Թագաւորաց հաւատացելոց, որպէս Աբգարու" եւն: ‖984 A "...Տրդատայ, Թէոդոսիցն եւ ամենայն սրբոց եւ բարեպաշտ" եւն. DF "...Տրդատայ եւ Թէոդոսիցն եւ ամենայն սուրբ թագաւորացն (չունին "եւ բարեպաշտ" (= J). BHG "Տրդատայ, Թէոդոսիցն եւ ամենայն սուրբ եւ բարեպաշտ" եւն, Nc "Տրդատայ, եւ Թէոդոսի (= տպ.) եւ ամենայն սրբոց (c սուրբ) եւ" եւն: C "Տրդատայ, եւ Թէոդոսիցն եւ ամենայն սրբոց" եւն. EM "Տրդատայ, Թէոդոսիցն եւ ամենայն սրբոց" եւն. GJN²abegsv "Տրդատայ եւ Թէոդոսիցն (besv Թէոդոսից, N² Թէոթոսից) եւ ամենայն սուրբ" եւն: ‖985 BCDFGHM

*որաց, եւ աստուածասէր իշխանաց, եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս, աղաչեմք: — Դպիրքն, Ողորմեա տէր եւ ողորմեա:*

*Սարկաւ. Ընդհանուր ամենայն հաւատացելոց, արանց եւ կանանց, ծերոց եւ տղայոց, եւ ամենայն չափու հասակի հաւատով եւ սրբութեամբ ի Քրիստոս ննջեցելոց, եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս, աղաչեմք, — Դպիրքն. Ողորմեա տէր եւ ողորմեա:*

## ՅԻՇԱՏԱԿՔ

ԻԴ. — *Եւ մինչ սրկն. զքարոզն ասիցէ, քհն. զաղաւթս ասիցի, զի ի միասին աւարտեսցեն. Ողորմեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զսուրբ կաթողիկէ եւ առաքելական եկեղեցի քո՝ զոր փրկեցեր պատուական արեամբ Միածնի քո, եւ ազատեցեր խաչիւն սրբով. շնորհեա սմա զանշարժ խաղաղութիւն: — Ողորմեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս՝ որք ուղիղ վարդապետութեամբ համառաւտեն ի մեզ զբանն ճշմարտութեան:*

---

եւ g "եւ աստուածասէր իշխանացն„ եւն: — MN "եղիցի յիշատակ սուրբ պատարագս„ եւն: ‖986 Դպրին պատասխանն՝ Դպրութեանց հետ՝ ունին նաեւ GHJK, չունին ABDEF եւն: ‖987 D "...ամենայն հաւատացելոց է Քրիստոս արանց„ եւն: — E "արանց եւ կանանցն„ եւն: ‖988 DJN²a "...տղայոց, հեթանոսաց եւ ննջեցելոց, եւ ամենայն„ եւն: — "Եւ սրբութեամբ„ չունի B, ունին DF եւ միւսները: ‖989 N² "...ի Քրիստոս Աստուած կատարելոցն: Ողորմեա Տէր եւ ող.:„ — Միւսներէն GJMac եւ N² "ի Քրիստոս հաւատարելոց„ (Ja "կատարելոցն„) փխ. "ննջեցելոց„ բառ այլոց (I²N եւն, իսկ ACEH եւ gjsv "ննջեցելոցն„): ‖990 Դպրի պատասխանն ունին Դպրութիւնք եւ BFGHI²JK:

ԻԴ. ‖992 Խորագիրը տարբեր ունին BDF (տես վերն.) որոնց կարգէն է N² "Յայսմ տեղոջս խունկ առէ, եւ քհն. ասէ ի ծածուկ զաղօթս, զի ի միասին աւարտեսցին:„ Կարճ է J՝ "Քհն. աղօթէ ի ծածուկ:„ Տպագրելոյն համեմատ ունին ACEGHIKMN "Եւ մինչ սրկն. զքարոզն (AIM զքարոզս), ասէ (= O), քհն. զաղօթս (K զաղօթսն) սկսանի (= O), զի ի միասին աւարտեսցին.„ (A "աւարտեսցի„, EIM "աւարտեսցին„ = S. իսկ C "աւարտի,„ E "աւարտեսցեն ըստ. Ողորմեա„ եւն. H չունի բնաւ. իսկ G վերջաւորութիւնն՝ "...զի ի միասին աւարտին քարոզն եւ աղօթքն,„ N "...Քհն. զաղօթս ասէ ի ծածուկ. Ողորմեա„ եւն:) PQ այսպէս՝ "Եւ մինչ նոքա երգեն զքարոզս, քհն. ասասցէ զաղօթս, զի ի միասին աւարտեսցին:„ ‖993 ACEGIJKM "եւ աւրհնեա † զսուրբ„ եւն: ‖994 ABCE "զսուրբ կաթուղիկէ առաքելական եկեղեցի„ եւն. FHIMN "զսուրբ կաթուղիկէ եւ առաքելական„ եւն (= OPQS) իսկ GJKN² բառ առ. (նաեւ O:) — N² "...եկեղեցի, զոր„ եւն, չունի "քո„ (= AB): — H "պատուական արեամբն.„ N² սխալմամբ "պատուական էյորեան„ եւն, J "պատուական մարմնոյ եւ արեան„ յաւելուածով: ‖995 N² "...զխաղաղութիւն տո:„ ‖996 GKM "եւ աւրհնեա †„ եւն: ‖997 D "համառօտին ի մեզ„ եւն. N "...համառօտեն ի մեզ„ եւն: — NN² "զբան ճշմարտութեան.„ H "զբանն ճշմարտութեանն:„ ‖999 "Սրկ. Աւրհնեա Տէր„ ունին Դպրութիւնք, եւ GHK "Սրկ. Աձն. աւրհնեա Տէր:„ ‖999–1000 "Ի ձայն„ չունի միայն D (= V²), միւս 22 եւ ՏՊ. ունին: — Եպիսկոպոսապետի յիշատակը շատ պէսպէս ունին 22: Այսպէս ABCEMN "Եւս առաւել զեպիս-

*Սրկ. Օրհնեա Տէր։ — Քհ. ի ձայն. Յիշեա առաւել զեպիսկոպոսապետն մեր մեր այս անուն շնորհեսցես մեզ ընդ երկայն աւուրս ուղիղ վարդապետութեամբ։ [Կամ Քահան. Յիշեա առաւել զսրբազան Պապն մեր՝ զտէր այս անուն. եւ զերջանիկ պատրիարքն մեր զտէր այս անուն: Կամ զարքեպիսկոպոսն մեր՝ զտէր այս անուն: Կամ զեպիսկոպոսն մեր զտէր այս անուն, շնորհեսցես մեզ ընդ երկայն աւուրս ուղիղ վարդապետութեամբ։]*

*Եւ ապա ի ձախակողմն սեղանոյն քարոզեսցէ սարկաւագն ձեւով աղաւթից: Զոր մի՛ ոք մոռացածին կարծելով շրջեսցէ, զի մեծին Խոսրովու է ասացեալ զառաջնոց աւրինացն: Գոհութիւն եւ փառաբանութիւն մատուցանեմք քեզ տէր Աստուած մեր, վասն սուրբ եւ անմահ պատարագիս որ ի վերայ*

---

կոպոսապետն մեր այս անուն (A զՏէր Պօղոս, N չունի “այս անուն„) շնորհեսցես մեզ„ եւն (= OS տպագրաց)։ D “Յիշեա առաւել զեպիսկոպոսապետն մեր եւ զպատուական հայրապետն Հայոցս Տեառն, զինչ որ լինի այս անուն, եւ զարհիեպ. շնորհեսցէ մեզ„ եւն։ F “Յիշեա առաւել զեպիսկոպոսապետն մեր եւ զպատուական հայրապետն ամենայն Հայոց այս անուն շնորհեսցես մեզ„ եւն (= PQ)։ GK “...զեպիսկոպոսապետն մեր այս անուն կաթողիկոս շնորհեսցես„ եւն։ H “...զեպիսկոպոսապետն մեր այս անուն եւ զերջանիկ քահանայապետն մեր շնորհեսցես„ եւն։ I “...զեպիսկոպոսապետն մեր եւ զպատուական հայրապետն եւ զերջանիկ քահանայապետն մեր զտէր այս անուն շնորհեսցես„ եւն։ J “...զեպիսկոպոսապետն մեր եւ զպատուական հայրապետն մեր տեառն շնորհեսցես„ եւն։ N² “...զեպիսկոպոսապետն մեր եւ զպատուական հայրապետն Հայոց զՏէր Մելքիսեդեկ (ջնջուած եւ յետոյ գրուած “Յակոբ„) եւ զպատուական հայրապետն մեր զտէր այս անուն շնորհեսցես„ եւն։ Նոյնպէս Դպրութիւնք, որոնցմէ՝ ab “...զեպիսկոպոսապետն մեր եւ զպատ. Ամէն։„ c “...զեպիսկոպոսապետն մեր եւ զպատուական հայրապետն Հայոց սուրբ Գրիգոր Լուսաւորիչն։„ — ՏԱ տես յաջորդը։ ‖1001—1004 Փակագծեալս ունին՝ նախընթացին տեղ՝ միայն ՏԱ ըստ սրբագրութեան Բաթուեղեանի, ուստի RTUVV²W. Ասոնցմէ RUVV²X “եւ զերջանիկ պատրիարքն մեր„ կ'ըսեն, իսկ TW “եւ ուղղափառական պատրիարքն մեր„ եւն։ X կցեր է՝ “...պատրիարքն մեր եւ զերջանիկ նախագահ զեպիսկոպոսապետն մեր զտէր Ա. կամ զերջանիկ եպիսկոպոսն մեր„ եւն։ V² չունի “կամ զեպիսկոպոսն մեր զտէր այս անուն„ բառերը։ — Բաթուեղեան այս յիշատակէն յառաջ կցեր է խրատագիր մը թէ “Աստ յետ յիշելոյն զՊապն, յիշեսցի եւս առաջնորդն տեղւոյն„ եթէ ուղղափառ է եւն։ Այս խրատագիրն ալ առած են (R)UTVW, դուրս ձգած են V²X, բայց նաեւ V² յետոյ աւելցուցած է՝ “Այսպէս ուղղափառ առաջնորդաց միայն լինի յիշատակ։„ ‖1005ff Երկար խրատագրիս տեղ կարճ բան մ'ունին BDF (տես վերն.) աւելի կարճ N² “Սրկ. առէ ի ձայն. Գոհութիւն„ եւն՝ առանց ուրիշ բանի։ J ամենեւին չունի խրատագիրս։ GK ալ պարզ “Սրգն. գայ ի ձախակողմն սեղանոյն եւ քարոզէ բարձր ձայնիւ. Գոհութիւն„ եւն։ Միւսներն ընդհանրապէս ըստ տպ.՝ քանի մը տարբերութեամբ։ CM “...ի ձախակողմ.„ N “...ի ձախակողմն.„ — ACEHIMN “...քարոզէ„ (= O). — AHIM “...ձեւով աղաւթից է Խս-„ (= O). — HM “Զի մի՛ ոք մոռացածին„ եւն. (փխ. “Զոր մի՛ ոք„ եւն ըստ CE եւն. իսկ AN չունի “Զոր„ բառը։) — N “...կարծելով շրջեսցի„ (փխ. “շրջեսցէ.„) — “զառաջնոց աւրինացն„ ըստ M եւ տպ., AH “զառաջնոց աւրինակացն„ (= OS), IN “զառաջնոց աւրինակաց,„ E “զառաջնոց աւրինականաց.„ իսկ C վերջն այսպէս՝ “...ձեւով աղօթից։ Մեծին Խոսրովու ասացեալ. Գոհութիւն„ եւն։ Տպագիրներէն PQ ալ կարճ “Եւ դարձեալ սրկն. գայ ի տեղի իւր. եւ քարոզեսցէ բարձր. Գոհութիւն„ եւն։

սրբոյ սեղանոյս: Զի զսա մեզ ի սրբութիւն կենդանութեան պարգեւեսցես: Մովաւ շնորհեա զսէր, զհաստատութիւն եւ զըղձալի զխաղաղութիւն ամենայն աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ, եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց: Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական Հայրապետին Հայոց Տեառն այս անուն եւ մերոյ եպիսկոպոսին: [Կամ Եւս առաւել սրբազան պապին մերոյ

---

||1007 Քարոզութիւնս ալ ունին ամէն 22 (A—B, D—N². բայց K միայն սկիզբը) եւ Դպրութիւնք abcegj եւ տպագիրք (R²V²stv)։ — Սկիզբը DFEJN² եւ aj "...փառաբանութիւն մատուցանեմք Տեառն Աստուծոյ մերոյ վասն„ եւն. I² "...մատուցանեմք Աստուծոյ մերոյ, վասն„ եւն. B "...մատուցցուք քեզ Տէր Աստուած մեր վասն„ եւն։ ||1009 EFGI²JNN² եւ aegsv "Զի ու մեզ„ եւն (փխ. "զի զսա„ եւն ըստ ABCDHM եւ տպ.) — FI²JN² եւ ejsv "...կենդանութեան պարգեւեսցէ„ (փխ. "պարգեւեսցես„ ըստ այլոց)։ ||1010 BFI²J եւ o "Մովաւ շնորհեսցէ զսէր„ եւն. N² "Մովաւ շնորհէ զսէր„ եւն. (փխ. "...շնորհեա„ ըստ այլոց եւ տպ.։) — E "...զհաստատութիւնն„ եւն։ ||1012—1013 Հաւ ալ Եպիսկոպոսապետի յիշատակութիւնն ունին 22 եւ ՏԲ, իսկ յաջորդ (փակագծեալ) յիշատակէ՝ ՏԱ։ — Տարբերութիւնքն հոս չափազանց շատ են ձեռագրաց մէջ։ ABCDEG այսպէս՝ "...եպիսկոպոսաց. Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական հայրապետին Հայոց տեառն այս անուն (A տեառն Պաւղոսի, D չունի "այս անուն,„ G "...տեառն այս անուն կաթուղիկոս„) եւ մերոյ (BD սրբազնեալ) եպիսկոպոսին (G այս անուն), եւ երջանիկ րաբունապետին մերոյ (C կցէ "այս անուն„, իսկ BD այս վերջինը "եւ երջանիկ„ եւն չունին) եւ քահանայիս որ զպատարագս մատուցանէ (CD եւ քահանայիցս որ ...մատուցանեն)։ Եւ վասն զաւրութեան„ եւն։ F "Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական հայրապետին Հայոցս տեառն տէր այս անուն եւ մերոյ սրբազնեալ արհիեպիսկոպոսին տէր Յակոբին եւ երջանիկ րաբունապետացն մերոց. եւ քահանայիցս ... մատուցանեն„ եւն։ HMN "Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական հայրապետին հայոց տեառն տէր այս անուն (H կցէ "կաթուղիկոս„) եւ մերոյ եպիսկոպոսին եւ երջանիկ րաբունապետին մերոյ (H կցէ "այս անուն„ իսկ N չունի "եւ երջանիկ„ եւն.) եւ քահանայից (MN քահանայիս) ...մատուցանեն։„ Կարճ J "Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական հայրապետին Հայոց տեառն, եւ քահանայիս„ եւն։ I² "Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական հայրապետին Հայոցս տեառն սուրբ Լուսաւորչին, կամ այս ինչ անուն կաթուղիկոս լինի, եւ մերոյ սրբազնեալ արհիեպիսկոպոսին տէր այս ինչ անուն եպիսկոպոսի, եւ երջանիկ րաբունապետին մերոյ, եւ քահանայիցս ...մատուցանեն։„ Կարճ նաեւ N² "Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական հայրապետին Հայոց տեառն տէր մեր Յակոբ (անունն ուրիշ գրով) եւ քահանայիցս որ ...մատուցանէ„։ — Դպրութիւնքն ալ նուազ պէսպէս չեն. (սկիզբը "Եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական հայրապետին„ նոյն ըլլալով ամէնուն քով՝ չենք կրկներ։) Այսպէս՝ a "...Հայոց զտեառն տէր... եւ քահանայիս որ ...մատուցանէ„. b՝ "...տեառն այս անուն եւ մերոյ արհիեպիսկոպոսին եւ երջանիկ րաբունապետին տեառն այս անուն, եւ քահանայիս„ եւն. c՝ "եպիսկոպոսապետին մերոյ եւ սրբազան հայրապետին տեառն Ա. եւ արհիեպիսկոպոսին մերոյ տեառն Ա. եւ քահանայիս„ եւն. e՝ "...Հայոց տեառն Լուսաւորչին, եւ երջանիկ րաբունապետին մերոյ այս անուն եւ քահանայիս„ եւն. g՝ "...Հայոց տեառն տէր այս անուն կաթուղիկոսին եւ մերոյ սրբազնեալ արհիեպիսկոպոսին տէր այս անուն, եւ երջանիկ րաբունապետացն մերոց, եւ քահանայիս„ եւն. j՝ "...տեառն տէր այս անուն, եւ մերոյ սրբազնեալ արգիեպիսկոպոսին տեառն տէր այս անուն, եւ քահանայիս„ եւն. վերջապէս տպագիրքն sv՝ "...ամենայն Հայոց տեառն այս անուն, եւ մերոյ արհի եպիսկոպոսին եւ երջանիկ րաբունապետին տեառն այս անուն, եւ քա-

տեառն այս անուն: Եւ պատուական Պատրիարգին մերոյ, կամ Արքեպիսկոպոսին, կամ Եպիսկոպոսին տեառն այս անուն:] Եւ քահանայիս, որ զպատարագս մատուցանէ: Եւ վասն զաւրութեան եւ յաղթութեան թագաւորաց քրիստոնէից, եւ իշխանացն բարեպաշտից: Աղաչեսցուք եւ խնդրեսցուք եւ վասն հոգւոցն հանգուցելոց: Եւս առաւել վասն հանգուցեալ րաբունապետացն մերոց, եւ շինողաց սուրբ եկեղեցւոյս, եւ որք ընդ հովանեաւ սորին են հանգուցեալ: Ազատութիւն եղբարց մերոց գերելոց, եւ շնորհ առաջեկայ ժողովրդեանս: Հանգիստ հաւատով եւ սրբութեամբ ի Քրիստոս կատարելոցն: Եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս, աղաչեմք: — Դպիրքն. Ըստ ամենայնի եւ յաղագս ամենեցուն:

---

հանայիս„ ունի: ‖1012–1014 փակագծեալը Բարսեղեանի (R²) սրբագրութիւնն է, որմէ նոյնը V²t. այս խումբն ի հարկէ չունի նախընթացը "Եպիսկոպոսապետին մերոյ„ ունի: ‖1014–1015 "Եւ քահանայիս որ ...մատուցանէ„, կամ "...քահանայիցս որ ...մատուցանեն„, տես մի առ մի ձեռագիրքն՝ տող 1012—1013: — Հոս կը կցէ t Բարսեղեանի խրատագիրը՝ "Իսկ կաթուղիկոսն կամ եպիսկոպոսն Հայոց եթէ իցէ հերետիկոս կամ հերձուածող, ոչ երբեք եւ ոչ ուրեք անուանիցի: Բայց եթէ իցէ ուղղափառ, անուանիցի միայն յիւրում թեմի եւ վիճակի, եւ ոչ արտաքոյ նորին:„ ‖1016–1017 AEGM "Եւ վասն զաւրութեան եւ յաղթութեան բարեպաշտ թագաւորին մերոյ եւ (EGM ամենայն) թագաւորաց քրիստոնէից: Աղաչեսցուք„ ունի: JN²v "Եւ վասն զօրութեանց եւ յաղթութեանց թագաւորաց„ ունի, մնացեալն ըստ տպ.: Միւսներն ըստ տպ. (B "...եւ իշխանացն Հայոց„ փխ. "...բարեպաշտից.„) բայց յաւելուածով են acj "...եւ իշխանացն բարեպաշտից. եւ բարեպաշտ (c չունի բառս) թագաւորին մերոյ (jc Ա.) եւ զինուորեալ մանկանց նորին եւ ամենայն ժողովրդեանս: Աղաչեսցուք„ ունի: ‖1017–1018 DEGMN² "...վասն հոգւոցն հանգուցելոցն.„ միւսներն ըստ տպ.: Շատ տարբեր հոս եւ յաջորդաց տեղ B՝ "Աղաչեսցուք եւ խնդրեսցուք վասն հոգւոցն հանգուցեալ թագաւորացն մերոց Լեւոնի, Հեթմոյ եւ Նախնեաց նոցին Ռուբինեանց: Ազատութիւն„ ունի (տես տող 1020): Տես վերն էջ 567—568: ‖1018–1020 A "...վասն հանգուցեալ րաբունապետացն մերոյ„ ունի ըստ տպ., բայց լուսանցքի վրայ "...հանգուցեալ Րաբունապետացն„ ունի. j՝ "...հանգուցեալ հայրապետացն մերոց„ ունի. — DN² "...րաբունապետացն մերոց եւ Նախնեաց նոցին, եւ շինողաց„ ունի: Տես վերն տող 1017 եւ էջ 568: — M "...եւ որ ընդ հովանեաւ սորին„ ունի: D "որք ընդ հովանեաւ ի սմա կան հանգուցեալ.„ N² "որք ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս կան հանգուցեալ:„ Միւսներն ըստ տպ. (բայց G եւ g "...սորին կան հանգուցեալ.„ e՝ "...հովանեաւ սորա են հանգուցեալ:„) Շատ տարբեր են F եւ I² "Եւս առաւել վասն հանգուցեալ րաբունապետացն մերոց Գաղչի, Վանականոյ, Վարդանոյ, Ներսէսի, Եսայեայ, Դաւթի, Տէրտէրա, Յոհաննէսի եւ Գրիգորի, Մխիթարայ եւ Կարապետի, Յովանէսի եւ Գրիգորի, եւ ամենայն աշակերտեալ մանկանց նոցին, եւ շինողաց... հովանեաւ սորա են հանգուցեալ:„ Ja՝ "Եւս առաւել վասն հանգուցեալ հայրապետացն մերոց եւ թագաւորաց եւ ի Քրիստոս հանգուցեալ իշխանաց, եկեղեցւոյ շինողաց, արդիւնաւորաց եւ պտղաբերից սուրբ եկեղեցւոյս եւ որք ընդ հովանեաւ սորին կան հանգուցեալ:„ ‖1020 E "եւ շնորհ առաջեկայ ժողովրդեանս, եւ հանգիստ„ ունի: ‖1021 BJ չունին "եւ սրբութեամբ,„ ունին միւս ամէնքը: ‖1022 F "ի Քրիստոս Աստուած ննջեցելոցն,„ (փխ. "կատարելոցն.„) նաեւ Ja "...ննջեցելոցն„, DN² "...ննջեցելոց.„ միւսներն ըստ տպ. (HNb "կատարելոց„ առանց յօդի:) ‖1023 "Ըստ ամենայնի„ ունի չունի A, ունին միւսներն, այսպէս EGK ունի: D "Ժող. Ըստ

Եւ ընդ սկսանել սարկաւագին զքարոզս, քհն. զաղաւթս սկսցի, զի ի միասին աւարտեսցեն. Յիշեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զքո առաջի կացեալ ժողովուրդս, եւ զպատարագիս մատուցողս, եւ պարգեւեա [իւրաքանչիւր] սոցա զպիտոյսն եւ զաւգտակարսն: — Յիշեա տէր եւ ողորմեա, եւ աւրհնեա զուխտաւորս, եւ զպտղաբերիչս եկեղեցւոյ քոյ սրբոյ եւ որք յիշեն զաղքատս ողորմածութեամբ. եւ հատո նոցա զպարտս նոցա ըստ ընդարքոյս առատութեան քո հարիւրապատիկ աստ եւ ի հանդերձելումն: — Յիշեա տէր եւ ողորմեա եւ գթա ի հոգիս հանգուցելոցն. հանգո զնոսին եւ լուսաւորեա եւ դասաւորեա ընդ սուրբս քո յարքայութեանդ երկնից, եւ արժանի արա ողորմութեան քում: — Յիշեա Տէր եւ զհոգի ծառայի քո

---

ամենայնի եւ յղ. ամենեցուն. Եւ մեզ՝ քրիստոնէից, ողորմեա.„ (= N[2]I[2]Ja, որ ունին վերջին նոտրագիրս:) D ասկէ ետքը "Եւ մինչ սրկն. քարոզէ. քհն. ասէ զաղ. ի ծածուկ, զի ի միասին աւարտեսցին: (Դպ.) Հոգի Աստուծոյ որ զերաւորեալ... (ՔՀ.) Յիշեա Տէր„ եւն: Նոյնպէս հոս ունին "Հոգի Աստուծոյ„ տողը (տես տող...) BFj, այսպէս B "Ժող. Ըստ ամենայնի եւ յղ. ամենեցուն: Եւ մինչդեռ սրկն. քարոզ ասէ, քհ. զաղաւթքն ի ծածուկ որ չմնայ: Դպ. ասէ: Հոգի Աստուծոյ որ զերաւորեալ... Ընդունիմ արեանն նորա...: (ՔՀ.) Յիշեա„ եւն: F "Դպիրքն եղանակեն. Ըստ ամենայնի...: Դպ. Հոգի Աստուծոյ որ զերաւորել.: Եւ մինչդեռ դպիրքն եղանակեն, քհ. արտասուօք խնդրեսցէ զհայցուածս ի Քրիստոսէ. եւ ասէ զաղաւթս ի ծածուկ որ ի միասին աւարտին. Յիշեա„ եւն: Նոյնպէս j "Դպ. Ըստ ամենայնի...: Հոգի Աստուծոյ որ զերաւորել.:„ N[2] ուրիշ տեղ ունի "Ըստ ամենայնի„ եւն, տես տող 1046: ‖[1024—1025] Խորատագրիս տեղ BDF եւ j տես նախընթացը: Տարբեր նաեւ GK "Եւ մինչ սրկն. զքարոզն սկսանի, քհն. զաղաւթս, զի ի միասին աւարտեսցին. Յիշեա„ եւն: N[2] "Եւ մինչդեռ սրկն. քարոզէ, քհն. զաղաւթս ասէ ի ծածուկ որ չիմանի (չմնայ) ի տեղին:„ J "Եւ մինչ սրկն. ասէ, քհ. զաղօթս ասէ:„ Նոյնպէս տարբեր PQ "Մինչ նոքա քարոզեն, քհ. ասասցէ զաղօթս ի ծածուկ:„ Միւսներն ըստ տպ. բայց նաեւ տարբերութեամբք: N[2] չունի "ընդ„. — A "սկսանելն„, RT "սկսանիլ„ (= V[2].) — N "...սկսանել սրկն. զքարոզ.„ E "...սարկաւագին քարոզս„ I "...սարկաւագին զքարոզ.„ — ACEHIMN եւ O "սկսանի.„ S "սկսանիցի.„ — N "սկսանի, է մի: Յիշեա„ եւն: — AIM աւարտեսցի„ (= OR.) C "աւարտեսցին.„ (= S.) միւսներն (EH եւն) "աւարտեսցեն:„ ‖[1025] GHK "եւ աւրհնեա †„ եւն: ‖[1026] N[2] "...ժողովուրդսն:„ — DJ "մատուցաւղս„ եւ նմաններ. H "մատուցանողս:„ — փակագծեալ "իւրաքանչիւր„ ունին BDFGJKN[2], չունին միւսները (ACEHIMN) եւ ՏՊ.: ‖[1027] N[2] "զօգտակարս:„ ‖[1028] A "...ողորմեա եւ պահեա զուխտաւորս„ (փխ. աւրհնեա:„) — Բոլոր 22 (A—N[2]) "...եկեղեցւոյ քոյ սրբոյ„ (= OPQS.) իսկ ՏԱ "...քոյ„ մեր դրածին պէս: ‖[1029] BDFKN[2] "հատոս զպարտս նոցա (BD նոցին) ըստ„ եւն. (փխ. "հատո նոցա զպարտս նոցա„:) ‖[1030] BD "ըստ ընդարքոյս առատութեանց„ եւն. J "ըստ ընդարքոյս առատութեանմբ քո„ եւն. PQ "...ըստ առատութեան քում„ եւն: — BDFN[2] եւ J "ի հանդերձելումն.„ N "ի հանդերձելումնդ:„ ‖[1031] DN[2] "...հանգուցելոցն, եւ որոց (N[2] յորոց) անուն զսոսքն պատարագիս մատուցանեմք. հանգո զամենեսեան (D լուս. "զնոսա„) եւ լուսաւորեա„ եւն: FGK "հանգուցելոցն, եւ վասն որոյ զսուրբ պատարագս մատուցանեմք. յիշէ (GK յիշեա) զննջեցելան զորս (GK զոր) կամի (GK կամիս) հանգո զնոսա„ եւն: — ABCEFGHK "հանգո զնոսա„ այլք "զնոսին,„ DN[2] "զամենեսեան:„ ‖[1032] J "դասաւորեա ընդ սուրբս քո, եւ արժանաւորեա ընդ սուրբս քո, եւ արժանի„ եւն: — N[2] "յարքայութեան երկնից„ եւն:

այս անուն, եւ ողորմեա նմա ըստ մեծի ողորմութեան քում, եւ հանգո այց-ելութեամբ ի լոյս երեսաց քոց. եւ՝ եթէ կենդանի է՝ փրկեա զնա յամենայն որոգայթից հոգւոյ եւ մարմնոյ: — Յիշեա տէր եւ զայնոսիկ՝ որք յանձնեցին մեզ յիշատակել յաղօթս՝ զկենդանիս եւ զհանգուցեալս. կառավարեա զկեանս հայցմանց նոցա եւ զմեղս ընդ ուղղորդն եւ որ լին է փրկութեամբ: Եւ վարձատրեա բոլորեցունց զանանց եւ զերանելի բարութիւնդ: Եւ զտեալ զխորհուրդս մեր տաճարացո յընդունակութիւն մարմնոյ եւ արեան միածնի քո տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի: Ընդ որում քեզ Հաւր ամենակալի հանդերձ կենդանարար եւ ազատիչ սուրբ Հոգւովդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն: — Սրկ. Աւրհնեա Տէր:

## ՆԱԽ ՔԱՆ ԶՏԷՐՈՒՆԱԿԱՆՆ

**Իե.** — *Քահանայն դարձցի եւ խաչակնքեսցէ զժողովուրդն ասելով բարձր.* Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ փրկչին մերոյ Յիսուսի

---

‖1033 D "...ողորմութեան քում: Եւ զկենդանիս փրկեա յամենայն որոգայթից հոգւոյ եւ մարմնոյ:" — ABCDEFGKMN "զհոգի ծառայիս քո:" IN² "զհոգի ծառայիս քո." HJ "զհոգի ծառայի քո" ըստ ՏՊ. (PQ "...ծառայի քում:") X այսպէս՝ "...զհոգի ծառայի քո կամ աղախնոյ քոյ Ա. Ա., յիշատակեսցէ զանուն այնր որոյ կամի մատուցանէ զպատարագն, եւ ողորմեա նմա" ունի: ‖1034 B "...այս անուն, ողորմեա նմա" ունի. N² "...ողորմեա նոցա ըստ" ունի: ‖1035 BDF չունին "Եւ եթէ կենդանի է" մինչեւ "հոգւոյ եւ մարմնոյ" (տող 1036) խօսքը: AEGHIJKMN "եւ թէ կենդանի է" ունի. (= PQ. իսկ N² "եթէ" = OS եւ ՏԱ.) բաց աստի OPQS եւ HIJKMN "եւ եթէ կենդանի է" խրատագիրն իբրեւ բնագրի մասն կը գրեն: C "եւ թէ կենդանի են՝ փրկեա" ունի. N² "...երեսաց քոց, եթէ կենդանի է, փրկեա զնոսա" ունի: CN² "փրկեա զնոսա:" ‖1036 J "յամենայն որոգայթից թշնամոյն հոգւոց" ունի: — E "հոգւոյ եւ մարմնոյ:" — GK վերջը կը կցեն "թէ կամիս զոր յանուանէ յիշել, աստ յիշեա:" ‖1037 G "յանձնեցին ի մեզ (G լուս. կցէ "զիւքեանս") յիշատակել" ունի: FN² "յանձնեցին մեզ զիւքեանս յիշատակել" ունի: — BDF "Եւ կառավարեա" ունի (= PQ): ‖1039 ACN "վարձատրեա բոլորեցունց զանանց" ունի: — N² "...զանանցդ" ունի: — C "...բարութիւնս:" ‖1040 K "տաճարացո զմեզ յընդունակութիւն" ունի. J "տաճարացս ընդունակութիւն" ունի: ‖1041 BN² "...Միածնիդ քո, է Յոյն, Տեառնդ մերոյ... ընդ որում քեզ Հաւրդ (B միանգամայն) եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ" ունի. (= J:) Վերջաւորութիւնն ("Ընդ որում" ունի) նաեւ F ըստ BN² DF "...Միածնի, է Յոյն, քո տեառնդ մերոյ" ունի. GK ալ "...միածնի քո, է Յոյն, տեառնդ" ունի: — CDIJKN² "Տեառնդ մերոյ" (= OPQV.) միւսներն "տեառն մերոյ". — ACDFIJ "եւ փրկչիդ", միւսները (նաեւ KN² ունի) "եւ փրկչին": ‖1042 EDGIKMN "հանդերձ... սուրբ Հոգւոյդ" ունին: — "Վայելէ" բայը չունի D. "փառք իշխանութիւն եւ պատիւ" բառերը չունի E. ‖1044 D վերջը՝ "Ժող. Ամէն." J "Դպ. Ամէն:"

Իե. ‖1046 Խրատագրիս տեղ BDF տես վերն: N² շատ տարբեր է հոս՝ "Դպիրքն եղանակեն եւ ասեն. Ըստ ամենայնի եւ յշ. ամենեցուն եւ մեզ էրէն ողորմեա (տես տող 1023): ՔՀՆ. ի ձայն ասէ. Եւ եղիցին ունի: Դպիրքն եղանակեն. Եւ ընդ հ. ք.: Սրկն. քարոզէ բարձրաձայն առ դուռս խորանին, ՔՀՆ.

Քրիստոսի † ընդ ձեզ ընդ ամենեսեան։ — Դպ. Եւ ընդ հոգւոյդ քում։ — Սրկ. Եւ ևս խաղաղութեան զՏէր աղա.։ — Դպ. Տէր ողորմեա։ — Սրկ.
1050 Ամենայն սրբովք զորս յիշատակեցաք, ևս առաւելապէս զՏէր աղաչեսցուք։ — Դպ. Տէր ողորմեա։ — Սրկ. Վասն մատուցեալ սուրբ և աստուածային պատարագիս որ ի վերայ սրբոյ սեղանոյս զՏէր աղաչեսցուք։ — Դպ. Տէր ողորմեա։ — Սրկ. Որպէս զի տէր Աստուած մեր որ ընկալաւ զսա ի սուրբ, յերկնային և յիմանալի իւր մատուցարանն, և փոխանակն առաքեսցէ

---

տանէ զաղօթս, զի ի միասին աւարտեսցին. Ամենայն սրբովք„ ևն։ J անխորագիր է կամ լոկ "քհ. Եւ եղիցի. ևն. N ալ լոկ "է յոյն. Եւ եղիցի„ ևն։ B այլ միւս ձեռագրաց հետ (ACEGHIJKM) ունի խորագիրս ըստ տպ. այսպէս՝ "(GK Եւ) քհն. դառնայ (= O) և խաչակնքէ (BE դառնայ խաչակնքէ) զժողովուրդն (GK ի վերայ ժողովրդեանն) և ասէ բարձր.„ (B և ասէ ի ձայն. I և ասէ բարձր ձայնիւ։„) Մեր գրածին պէս են ՏՊ. (բայց O "դառնայ և խաչակնքէ„ ևն. PQ "...և ասասցէ ի ձայն.„ S լոկ "ասելով„՝ չունի "բարձր.„) ||1047 BDJK "մեծին Աստուծոյ.„ $N^{2}$ "մեծիդ Աստուծոյ„ ևն։ — BD$N^{2}$ "և փրկչիդ մերոյ.„ JK "և փրկչին մերոյ։„ ||1048 M "ընդ ձեզ †„ ևն։ — H "ընդ ամենեսեանդ.„ (= PQS.) իսկ N "...ընդ ամենեսեանս. Ամէն։„ ||1048—1049 A "Սրկ. Եւ ընդ հ. ք.։ Սրկն. քարոզէ. Եւ ևս խղ.։ Ժող. Տէր ող.։ Ամենայն սրբովք„ ևն. J "Ժող. Ամէն և ընդ հ. ք.„ (= P. իսկ PQ նաև "Սրկ. Ամէն. Եւ ևս խղ.։„) B$N^{2}$ միայն "Եւ ընդ. հ. ք.„ կը գրեն՝ կցելով "Ամենայն սրբովք„ ևն։ Միւսներն ընդհանրապէս տպագրին պէս. (D խորագրաւս "է Նէ- քարոզէն. Ամենայն սրբովք„ ևն. J "Սրկ.„ և "Դպ.„ չի դներ, միւսներն ալ պէսպիսութիւն ունին "Դպ.„ և "Ժող.„ գրելով։) ||1050 "Ամենայն սրբովք„ ևն քարոզութիւնքս չունին ի հարկէ տպագիր խորհրդամատոյցները՝ միայն սկիզբը նշանակելով. ունին ամէն 22 (A—$N^{2}$) և Դպրութիւնք abcegj և տպագիրք $R^{2}V^{2}$stv: Միանգամ ըսենք որ "Տէր ող.„ պատասխանը շատ 22 լիակատար չեն գրեր (այսպէս AB ևն)։ — Միայն j ռամկացեալ "...զորս յիշատակեցինք„ ևն։ ||1051 Նախ a տարբեր կարգաւ ունի տներն, այսինքն նախ "Որպէս զի տէր„ ևն. յետոյ "Վասն մատուցեալ„ ևն, և ապա՝ "փոխանակ առ մեզ„ ևն (տող 1054)։ — BDF$N^{2}$ այսպէս ունին տունս "Վասն մատուցեալ սուրբ անմահ (B "աստուածային„ փխ. "անմահ„) պատարագիս առաջն Աստուծոյ մերոյ զՏէր աղաչեսցուք։„ ACEGHMN և g "Վասն մատուցեալ սուրբ և աստուածային պատարագիս զՏէր աղ.։„ Jacj "Վասն մատուցեալ սուրբ (acj և անմահ) և պատուական պատարագիս առաջն Աստուծոյ մերոյ զՏէր աղ.։„ Տպագրին աւելի նման $I^{2}$be "Վասն մատուցեալ սուրբ և անմահ պատարագիս, որ ի վերայ սրբոյ սեղանոյս„ ևն. ($I^{2}$ կը պակսի "պատարագիս„ բառով՝ թղթեր ինկած ըլլալով՝ և կը սկսի միայն 1163 "Վէմ հոգևոր„ ևն։) Բարսեղեան ($R^{2}$) սրբագրած է "վասն մատուցանողաց սուրբ և աստուածային պատարագիս„ ևն, զոր պահած է նաև $V^{2}$, բայց ոչ t ևն։ ||1053 B "Որպէս զի տէր Աստուած մեր ընկալցի զսա ի սուրբ„ ևն։ ||1054 A "...ի սուրբ և յերկնային„ ևն։ ABC "...յերկնային մատուցարանն, փոխանակ առ մեզ առաքեսցէ զշնորհս և զպարգևս Հոգւոյդ (B Հոգւոյն) սրբոյ զՏէր„ ևն։ Երկուքի կը բաժնեն DFEGJKN$N^{2}$ և acej "...յիւր մատուցարանն (e մատուցարան) զՏէր աղաչեսցուք։ Փոխանակ առ մեզ առաքեսցէ„ ևն. M այսպէս "...մատուցարանն, փոխանակ առ մեզ առաքեսցէ„ ևն՝ առանց բաժանումի, Jb ընդհակառակն ըստ տպուածին են. a տես տող 1050։ Տպագիրներէն v "...մատուցարանն, զփոխանակն առաքեսցէ առ մեզ„ ևն, s "...մատուցարանն, և փոխանակն առաքեսցէ„ ևն։ Իսկ j կրկին ձևն ալ ունի, նախ DFE ևն ձեռագրաց պէս, յետոյ նաև ըստ տպ.։ Վեր-

*առ մեզ զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյն սրբոյ զաէր աղաչեսցուք։ — Դպիրքն. Տէր ողորմեա։ — Սարկաւ. Ընկալ, կեցո, եւ ողորմեա, եւ պահեա զմեզ տէր քոյին շնորհիւդ։ — Դպիրքն. Կեցո տէր եւ ողորմեա։ — Սարկաւ. Զամենասրբուհի զաստուածածինն, զմիշտ կոյսն Մարիամ, հանդերձ ամենայն սրբովք յիշելով, զտէր աղաչեսցուք։ — Դպ. Տէր ողորմեա։ — Սարկաւ. Եւ եւս եւ վասն միաբանութեան ճշմարիտ եւ սուրբ*

---

*ձայնէս* g *հոս եւ ասկէ ետքն այսպէս՝ «...մատուցարանն, փոխանակ առ մեզ առաքեսցէ...։ Ընկալ, եւն։ Զամենասրբուհի, եւն։ Եւ եւս մի։ Զանձինս։ Ողորմ.։ Տէր ողորմեա, երիցս։ Աւրհնեա Տէր։ Հայր մեր որ յեր.։ Սրկ. Զքորէն էս ղուփրոյսըն, եւն։ Զմնացուոփո, եւն։ Զփըրխոպնէսյոն, եւն։ Զմփոքոնոսբխոն, եւն։ Ընկալ կեցո եւ ող.։» Հոս կը սպառի* g՝ *Թղ.* 206*էն ետքը պակասաւոր ըլլալով։* ‖1056 *Փխ. «Դպ. Տէր ող.» ըսելու՝ ունին հոս* ac *«Դպ. Շնորհեա Տէր։» — Այստեղ կը յաւելուն* BDFJN² *եւ* acgj *«Զքորէն ե-ղուփրոյսըն անձանց մերոց եւ զխաղաղութիւն* (N *մերոց՝ խաղաղութեամբ*) *ամենայն աշխարհի ի տեառնէ խնդրեսցուք։ Դպ.* (N² *եղանակեն.*) *Շնորհեա տէր։ Զմնացուոփո ժամանակաց մերոց խաղաղութեամբ կատարեալ* (N² *խաղաղութեամբ անցուցանել հաւատով*) *ի տեառնէ խնդրեսցուք։* (Ja *Շնորհեա տէր։*) *Զփրխոպնէսյոն կատարումն կենաց մերոց անվրդով եւ անամօթս* (a *անամօթ*) *եւ բարի պատասխանատուութեամբ* (N² †, *իսկ* DF *չունին «բարի պատասխանատուութեամբ.»* c *զոր տես նաեւ վարը տող* 1060՝ *«...յանվրդովս եւ յանամօթս ի բարի պատասխանատուութեան»*) *կալ առաջի ահաւոր բեմին ի տեառնէ խնդրեսցուք։* (Ja *Շնորհեա Տէր։*) *Զմփոքոնոսբխոն հաւատոյ* (a *հաւատոց*) *եւ զհաղորդութիւն Հոգւոյն սրբոյ հայցելով ի տեառնէ խնդրեսցուք։* (Ja *Շնորհեա տէր։*) *Ընկալ կեցո» եւն.* g *ձեռագրինը տես տող* 1054։ ‖1057 EGHMN *եւ* e *«...պահեա զմեզ Աստուած քոյին» եւն.* (*փխ.* «*Տէր»*) J *եւ* D *ալ չունին «Տէր».* — J *«քոյին շնորհիդ.»* F *եւ* ek *«...քոյին շնորհիւդ՝ զՏէր [աղաչեսցուք։]»* N² *տես քիչ մ՚ետքը։* — E *չունի «եւ ողորմեա.» իսկ* a *Դպրաց պատասխանը՝ «Կեցո զմեզ Տէր քոյին շնորհիւդ.»* BEG *եւն ըստ ապ.։* ‖1058—1059 BDF *«Զամենասրբուհի Աստուածածինն* (D *զամենասրբուհին Աստուածածին*), *ղոնոքոոն, ղուոուեղ ուրձնէուլ ոփրոոհէն եւ զմիշտ կոյսն Մարիամ յիշելով եւ զամենայն սուրբս եւ զնոքաւք* (F *նոքաւք*) *զՏէր» եւն* (B *Մարիամ հանդերձ ամենայն սրբովք յիշելովք զՏէր։*) GK *«Զամենասրբուհի Աստուածածինն, զամենաւրհնեալ տիրուհին* (K *զանարատ զառաւել աւրհնեալ տիրուհին*), *զմիշտ կոյսն Մարիամ, յիշեսջիք զամենայն սուրբս եւ նոքաւք զՏէր աղ.։»* N² *«Ընկալ կեցոյ եւ պահեա զմեզ տէր քոյին շնորհիւ. զանարատ զառաւել տիրուհի եւ զմիշտ կոյս Մարիամ յիշեսցուք եւ զամենայն սուրբս եւ զնոքաւք զտէր աղաչեսցուք։ Եւ եւս միաբան վասն ճշմարիտ։ Զանձինս։ Ողորմ.։» Նաեւ* e *«Զամենասրբուհի եւ զմիշտ կոյս Աստուածածինն* (K *զԱստուածածինն*) *Մարիամ հանդերձ ամենայն սրբովք յիշելով տէր» եւն։* Ja *«Զամենասրբուհի Աստուածածին, զանարատ եւ զառաւել աւրհնեալ տիրուհին,* (J *եւ*) *զմիշտ կոյսն Մարիամ հանդերձ ամենայն սրբովք յիշեսջիք եւ զնոքաւք զտէր։» Միւսներն ըստ ապ. ի մասնաւորի՝* ACEHMN *«Զամենասրբուհի Աստուածածինն* (N *Աստուածածին*), *զմիշտ* (H *ես զմիշտ* = BDFJGK) *կոյսն Մարիամ հանդերձ ամենայն սրբովք յիշելով* (C *եւ* b *յիշելովք*) *զտէր։» Տպագրին աւելի նման են* CH *եւ* bcg. — *Վերջը հոս կը համառօտեն* EGHN *«Եւ եւս մի։ Զանձինս։ Ողորմ.։» Վերջը կը համառօտեն այսպէս նաեւ շատ 22., այսպէս* ABCM *եւն, լիակատար է* F։ ‖1059—1060 *Դպրին պատասխանը հոս* BDFJae *ունին «Դպ. Յիշեա Տէր եւ ողորմեա.»* b *ըստ ապ. «Տէր ող.։»* ‖1060 Jaev *«Եւ եւս միաբան վասն ճշմարիտ եւ սուրբ եւ։» Միւսները համառօտած «Եւ եւս մի.» կամ «միաբան.»*

հաւատոյս մերոյ զտէր աղաչեսցուք: — Դպ. Տէր ողորմեա: — Սարկաւ. Զանձինս մեր եւ զմիմեանս անձանց Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք: — Դպ. Քեզ տեառնդ յանձն եղիցուք: — Սարկ. Ողորմեաց մեզ տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում: Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ: — Դպ. Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:

Եւ անդէն ընդ քարոզութեանն՝ քհն. բազկատարած խոնարհաբար աղաւթեսցէ ի ծածուկ. Աստուած ճշմարտութեան, եւ Հայր ողորմութեան, գոհանամք զքէն որ ի վեր քան զերանելի նահապետացն զմեր պարտաւորեցելոցս առաւել մեծարեցեր զբնութիւն: Վասն զի նոցա Աստուած կոչեցար, իսկ մեզ Հայր հաճեցար անուանիլ գթալով: Եւ այժմ տէր աղաչեմք զքեզ, զայսպիսի առ ի քէն զնորոգ եւ զպատուական անուանակցութեանս շնորհ աւր ըստ աւրէ պայծառացեալ ծաղկեցո ի մէջ եկեղեցւոյ քում սրբոյ: — Սրկ. Աւրհնեա Տէր: — (Քհն. ի ձայն.) Եւ տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր, կարդալ զքեզ երկնաւորդ Հայր, երգել եւ ասել:

---

իսկ C հա "Զմի բնո-բի-ն (մխ. "Զմի-բանո-բի-ն") հաւատոյ եւ զհաղորդութիւն Ոգւոյն սրբոյ հայցեալ ի Տեառնէ խնդրեսցուք:" Ուրիշ ձեռագիրք վերն ունէին զայս, տես տող 1055: ‖1063 Ja "Քեզ տեառնդ Աստուծոյ ամենակալին յանձն եղիցուք:" F ըստ տպ. ուստի չունի "Աստուծոյ ամենակալին" բառերն (= bev եւն): ‖1065 N "Դպ. գ. տէր ողորմեա ասէ:" Ըստ տպ. Fbev եւն: GK ալ "Դպ. գ. Տէր ողորմեա եւ գ. Շնորհեա տէր ասէ ձայնիւ:" ‖1066 Խորատագրիս տեղ BDF ուրիշ ունին. որոնց կարգէն N² "Եւ մինչդեռ որհն. քարոզէ, եւ քհն. ասէ զաղաւթս. Աստուած ճշմարտութեան, եւն: GK "Եւ ընդ քարոզին քհն. բազկատարած աղաւթէ ի ծածուկ, զի ի միասին աւարտին. Աստուած" եւն: J "Եւ մինչդեռ ասեն, քհ. աղօթէ ի ծածուկ. Աստուած" եւն: Միւսներն ըստ տպ. բայց E "Եւ անդէն ընդ քարոզին." (O Եւ անդէն ընդ քարոզիւս.") H "...ընդ քարոզութեան." ACIM եւն "...ընդ քարոզութեանն". — ACEHIMN "աղաւթէ" (= O): Տպագիրներէն PQ "Մինչ որհն. քարոզէ, քհն. ասասցէ ի ծածուկ. Աստուած" եւն: ‖1067 E "Աստուած ճշմարտութեանն:" ‖1068 CN "...զերանելի նահապետաց զմեր" եւն: — N² "...զմեր պարտաւորեալցն առաւել" եւն: ‖1069 BCDFJMN "զմեր ...մեծարեցեր զբնութիւն." միւսներն (AEG եւն) "...զբնութիւն." ըստ տպ.: ‖1070 BDFJ "Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր զայսպիսի." N² "Եւ այժմ աղաչեմք զքեզ, զայսպիսի" եւն (չունի "Տէր"): ‖1071—1072 BDFJN² "...զպատուական անուանադրութեան զշնորհս (BJN² շնորհս) հանապազ պայծառացեալ ծաղկեցո աւր ըստ աւրէ ի սուրբ եկեղեցւոջ քում." (J "ի մէջ եկեղեցւոյ քում սրբոյ.") ուստի բառերու կարգը տարբեր: Միւսներն ըստ տպ., բայց H "...անուանաչրութեանս շնորհս" եւն. GK "...անուանադրութեան շնորհս աւր ըստ աւրէ" եւն. M "անուանադրութեանս շնորհս աւր ըստ աւրէ" եւն: ‖1073 "Սրկ. աւրհնեա տէր," ունին Դպրութիւնք: Ամէնքը լոկ "ի ձայն." C "Քհն. ասէ ի ձայն." GK "ի ձայն ասա." (V չունի "ի ձայն", այլ լոկ "Քհ."): ‖1074 BD "...բանալ զբերանս մեր, երգել եւ ասել." (չունին "կարդալ" եւն:) FGK "...զբերանս մեր, կարդալ առ Հայրդ երկնաւոր, երգել" եւն. (= J "...կարդալ առ քեզ Հայր երկնաւոր".) իսկ N² աւելի նման տպագրին "...կարդալ զքեզ Հայրդ երկնաւոր:" Միւսներն (ACEHIJMN) ըստ տպ. (H "...զքեզ երկնաւոր Հայր" առանց յօդի:)

ՏԷՐՈՒՆԱԿԱՆՆ

ԻԶ. — Եւ դպիրքն բազկատարած եղանակեսցեն. Հայր մեր որ յերկինս ես, սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո, որպէս յերկինս եւ յերկրի. զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսաւր. թող մեզ զպարտիս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց. եւ մի տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէ:

Եւ մինչ նոքա երգեսցեն՝ քահանայն աղաւթեսցէ ի ծածուկ. Տէր տէրանց, Աստուած աստուածոց, թագաւոր յաւիտենական, արարիչ ամենայն արարածոց, հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, մի տար զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէ, եւ ապրեցո ի փորձութենէ: — Սրկ. — Աւրհնեա տէր: (Քահ.) ի ձայն. Զի քոյ է արքայութիւն եւ զաւրութիւն եւ փառք յաւիտեանս. Ամէն: — Խաղաղութիւն † ամենեցուն: — Դպ. Եւ ընդ հոգւոյդ քում: — Սրկ. Աստուծոյ երկրպագեսցուք: — Դպ. Առաջի քո տէր:

---

ԻԶ. ‖1076 “Եւ դպիրքն” գրինք ըստ PQSV², մինչ ՏՊ, (ORTUVW) “Եւ ժողովուրդն բազկատարած” ունին (= A, նոյնպէս EHIMN “Եւ ժողովուրդն” ունին): — ACEHIMN “եղանակեն”, ՏՊ “եղանակեսցեն:” Խորագրիս տեղ ուրիշ մ'ունին BDFGKIN², այսինքն B “ի ձայն սաեն բարձր, քհ. ի ծածուկ. Հայր մեր” ունի: D “Իսկ ժող. երգեն բարձր ձայնիւ եւ քհ. ի ծածուկ. Հայր մեր”: F “Իսկ ժողովուրդքն բարձր սաեն եւ քհ. ի ծածուկ. Հայր մեր” ունի: GK “Ժողո. բազկատարած սաեն բարձր եւ քհն. ի ծածուկ, Հայր” ունին: J լոկ “Դպ. եղանակեն ձայնիւ. Հայր” ունի: N² “Դպիրքն եղանակեն եւ սաեն ի ձայն. Հայր մեր” ունի: — “Հայր մեր” աղօթքն ունին ըստ այսմ ամէն ՁՁ. եւ Գպրութիւնք abegklmnopq եւ տպագիրք R²V²stv. (K եւ տպագիր խորհրդատետրները սկիզբը միայն կը նշանակեն:) ‖1077 FGN² եւ gklnopq “որ յերկինս ես” (= V²). իսկ N “որ յերկինս, սուրբ” ունի (չունի “ես” բայը:) — ՁՁ. “եղիցին կամք քո” (Dno “եղիցին Տէր կամք քո”.) իսկ R²t եւ ձեռագիրներէն jm “եղիցի կամք քո:” ‖1079 ABCDEGHIMNN² եւ gnopq “թող մեզ զպարտս մեր” (փխ. “զպարտիս” ըստ ՏՊ. եւ FJ եւ abeklm): — Միայն kl “պարտապանայն:” ‖1080 ABCDEGHIMNN² եւ bcgmn “եւ մի տար զմեզ ի փորձութիւն” (փխ. “մի տանիր” ըստ ՏՊ եւ FJ եւ akopq.) — ABCEGHM եւ abegnop “այլ փրկեա ի չարէն.” (ՏՊ եւ DIJNN²klmq “ի չարէ:”) Հոս կը կցէ a “եւ ապրեցոյ ի փորձութենէ. զի քոյ է” ունի: Իսկ m “Հայր մեր”էն ետքը (Թղ. 57բ) այսպէս “Աւրհնեա տէր: Դպ. Միաբան աղաչեսցուք [illegible] մեր Քրիստոս, զի արժանի արասցէ զննջեցեալս մեր [illegible] ընդ [illegible], [illegible] յաւիտեան: Սրկ. Պռոսխումէ: Դպ. Միայն սուրբ” ունի. (տես տող 1101:) ‖1081 BD լոկ “Քհ. ի ծածուկ. Տէր տէրանց. ունի: Նոյնպէս N²՝ “Քհն. սաէ ի ծածուկ.” J՝ “Քհ. ի ծածուկ աղօթէ:” Միւսներն ըստ տպ. որոնցմէ CGKN “Մինչ նոքա” (= PQ, փխ. “Եւ մինչ նոքա” ըստ այլոց եւ OS եւ ՏՊ.) — ACEGHIKMN “...երգեն (= OPQ, իսկ S “երգիցեն”) քհն. աղաւթէ (= O) ի ծածուկ.” (HN չունին “ի ծածուկ:”) ‖1082 ABDFGHKN² “թագաւոր յաւիտենից” (փխ. “յաւիտենականն” ըստ CEIJMN եւ ՏՊ): ‖1083 BDFJN² “մի տար զմեզ ի փորձութիւն ե- մի է [illegible], այլ” ունի: ‖1084 BCDEFGIK “այլ փրկեա ի չարէն.” (AHJM ունի “ի չարէ” ըստ տպ.:) — DJ “ի չարէ. Եւ ապրեցո” ունի: CFN² չունին “եւ ապրեցո ի փորձութենէ” խօսքը: ‖1085 “ի ձայն” չունին ABJ (= V²), ունին միւս ամէնքը: — D “...արքայութիւն, զօրութիւն” ունի: N² “...յաւիտեանս յաւիտենից. ամէն:” Հոս կրկնութիւն ունի F՝

## ԱՂԱՒԹՔ ԽՈՆԱՐՀՄԱՆ

ԻԷ· — *Քահանայն խոնարհեսցի եւ ամենայն ժողովուրդն ընդ նմա ի վայր, եւ քհն. աղաւթեսցէ ի ծածուկ.* Որ աղբիւրդ ես կենաց եւ բղխումն ողորմութեան, Հոգիդ սուրբ, ողորմեա ժողովրդեանս որք խոնարհեալ երկիր պագանեն աստուածութեանդ քո: Պահեա զսոսա ամբողջս. տպաւորեա յոգւոջ սոցա զձեւ մարմնոյ ցուցակի առ ի ժառանգութիւն եւ ի վիճակ հանդերձելոցդ բարեաց: — *Սրկ. Աւրհնեա Տէր:* — *(Քհն.) ի ձայն.* Քրիստոսիւ Յիսուսիւ տերամբ մերով, ընդ որում քեզ Հոգւոյդ սրբոյ եւ Հաւր ամենակալի վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

---

“Զի քո է... յաւիտեանս ամէն: Եւ քհն. ի ծածուկ ասէ զաղաւթս. Տէր փրկոյ, եւն: Ի ձայն. Զի քո է, եւն: Ժող. Ամէն:„ ‖1086—1087 Այս մասն բուն եւ յաջորդ (ԻԷ) համարին խրատագրին տեղ ուրիշ խրատագիր մ'ունին BDF (տես վերն.) որոնց նման է N²' “Քհն. դառնա խաղաղութիւն տա ժողովրդեանն: Սրկն. ասէ. Աստուծոյ երկրպ.: Եւ ժողովուրդն խոնարհին երկրպագութիւն, եւ քհն. խոնարհի եւ ասէ զաղաւթս. Որ աղբիւրդ„ եւն: — Միւսներն բուռ տպ., թէեւ պէսպիսութիւնք կան, ոմանք այլեւայլ մասեր գրած չըլլալով. ոմանք “Ժող.„ կ'ըսենք, այլք “Դպ.„ (DEGKN²OPQS) եւն: Ամէնքը սկիզբը՝ “Քհ. (D Եւ քհն.) Խաղաղութիւն„ եւն. (միայն OPQS չունին հոս “Քհ.:„) — D “Եւ հոգւոյդ քում„ (= S.) — GK “Ժող. (= M) Աստուծոյ երկրպ:: Սրկ. (= PQ) Առաջի քո Տէր: Աւրհնեա տէր:„

ԻԷ. ‖1089—1090 Խրատագիրն՝ AH “Քհն. խոնարհի եւ ասէ եւ ամենայն ժողովուրդն խոնարհին ի վայր եւ քհն. աղաւթէ ի ծածուկ.„ (H չունի “ի ծածուկ:„) GK “Քհն. խոնարհի եւ ամենայն ժողն. ընդ նմա եւ քհն. աղաւթէ ի ծածուկ:„ I' “Քհն. խոնարհեցուցանէ զգլուխն եւ ամենայն ժողովուրդն խոնարհի ի վայր եւ քհն. աղաւթէ ի ծածուկ:„ Միւսները CEHMN “Քհն. խոնարհի (= O) եւ ամենայն ժողովուրդն (E ժողովուրդքն = V) խոնարհի (Դպրութիւնք “խոնարհին„) ի վայր (այսպէս EMNO, իսկ C “...ժողովուրդն ընդ նմա ի վայր„) եւ քհն. աղաւթէ (= O, իսկ N “քհն. աղաղակէ„) ի ծածուկ:„ Տպագիրներէն PQ “Քհն. խոնարհեսցի եւ ժողովուրդն չոքեսցէ ի ծունկս եւ քհն.„ եւն: J լոկ “Քհն. ի ծածուկ ասէ.„ BDF տարբեր եւ N² տես առ 1086—1087: ‖1090 GJM “աղբիւրդ„. BEN² “աղբերդ:„ ‖1091 DFJ “...ժողովրդեանս որ խոնարհեալ„ եւն: — N² բուն “երկիր պագեն„, յետոյ ուղղուած: ‖1092 DFGJKN² “երկիրպագանեն առաջի աստուածութեանդ քո„ եւն: — PQS “երկիրպագանեն աստուածութեան քում.„ (O միւս տպագրաց եւ ձեռագրաց պէս “...աստուածութեանդ քո:„) — HN² “Պահեա զսոսա ամբողջս„: ‖1094 E “հանդերձելոց բարեաց.„ F “հանդերձելոց բարեացդ:„ — “Սրկ. Աւրհնեա տէր„ ունին Դպրութիւնք, որոնք (այսպէս tv) “Եւ օրհն. յոյժ. Աւրհնեա տէր„ կ'ըսեն. (b չունի:) — “Ի ձայն„ չունի A. ունին միւսները. (K “ի ձայն ասաց:„) — J “Նոյն Քրիստոսիւ Յիսուսիւ„ եւն: ‖1095 M “...տերամբ մերում„ եւն: — N² “Ընդ որում քեզ Հաւր եւ Հոգւոյդ սրբոյ„ եւն: ‖1096 “Վայելէ„ բայը չունի D: ‖1097 Միայն a “Դպ. Ամէն:„ Հոս կը յաւելու J “Եւ ասէ Գործաւորն: Քհ. աղաւթէ ի ծածուկ. Նոյնա Տէր մեր, եւն (առ 1112): Սրկ. Պռոսխումէ„ եւն (առ 1100): Նոյնպէս j հոս կը յաւելու (Թղ. 175բ—179ա) “Զինչ ասէ Գործաւորն ըստ յոյնի առաւրն: Կիւրակէի յարեան. Այ. Բարձրացուցէք զՏէր Աստուած մեր զոչէ մարգարէն, երկրպագեցէք պատուանդանի ոտից նորա„ եւն եւն, դնելով “Գործաւորաց„ շարք մը:

## ՎԵՐԱՑՈՒՑՈՒՄՆ

**ԻԸ.** — *Եւ քահանայն առեալ զսուրբ հացն ի ձեռս. սարկաւագն ձայնեսցէ բարձր.* Պատասխանեմք: — *Եւ քահանայն բարձրացուցէ ակներեւ ժողովրդեանն եւ ասասցէ.* Ի սրբութիւն սրբոց: — *Դպ. բարձր ձայնիւ.* Միայն սուրբ, միայն տէր, Յիսուս Քրիստոս, ի փառս Աստուծոյ Հաւր. Ամէն: — *Սրկ.* Աւրհնեա տէր: *ՔՀՆ.* Աւրհնեալ Հայր սուրբ Աստուած ճշմարիտ: *Դպ.* Ամէն: — *Սրկ.* Աւրհնեա տէր: *ՔՀՆ.* Աւրհնեալ Որդին սուրբ Աստուած ճշմարիտ: *Դպ.* Ամէն: — *Սրկ.* Աւրհնեա տէր: *ՔՀՆ.* Աւրհնեալ Հոգին սուրբ Աստուած ճշմարիտ: *Դպ.* Ամէն: — *Սրկ.* Աւրհնեա տէր:

---

ԻԸ. Այս ամբողջ Հատուածին կարգը եւ խրատագիրքը շատ տարբեր ունին BDF, զորոնք տես վերն իրենց տեղը: N² ալ՝ "ՔՀՆ. երկրպագէ երիցս եւ համբուրէ զսեղանն եւ զաչսն ի վեր ակնարկէ անարժան վարկանելով զինքն յայսմ աստուածային գործառութեան առնելով զաղաւթս. Նոյնա Տէր, եւն (տող 1112): Եւ առնու զհացն սուրբ ի ձեռն աջիւ մեծաւ առնելով. Բարձրեալ ես դու յերկինս Աստուած (= F. իսկ B "Բարձրեալ ես դու յերկինս Աստուած յամենայն երկիր." D չի դներ): Սրկն. գոչէ. Պատասխանեմք: ՔՀՆ. ասէ. Ի սրբութիւն սրբոց: Միայն սուրբ եւն (տող 1101): Եւ ՔՀՆ. բարձրացուցանէ Բ. ձեռաւքն զընծայն բարձր քան զգլուխն եւ ասէ. Ի սրբութիւն սրբոց: Եւ ժողովուրդն միաբերան աղաղակեն եւ ասեն. Միայն սուրբ, միայն տէր: ՔՀՆ. ունելով զընծայն ի ձեռն ասէ. Աւրհնեալ Հայր ճշմ.: Աւրհնեալ Որդի ճշմ.: (— Հոս թուղթ ինկած է. թղ. 89ա կը սկսի.) Սուրբ հոգւոյ եւն: Դպիրքն եղանակեն. Աւրհնեալ է Աստուած: Քրիստոս պատարագեալ, եւն. (տես Հատ. ԻԹ:) ‖1101–1104 A "Եւ առնու ի ձեռն զսուրբ հացն: Եւ սրկ. ձայնէ բարձր. Պատասխանեմք: Դպ. Միայն սուրբ" եւն: C "Եւ առնու քհն. զսուրբ հացն ի ձեռն եւ աղաւթէ ի ծածուկ. Նոյնա Տէր մեր եւն (տող 1112): Բարձրացուցանէ զսուրբ հացն ակներեւ ժողովրդեանն եւ ասէ. Ի սրբութիւն սրբոց: Եւ սրկն. ձայնէ բարձր. Պատասխանեմք: Եւ դպիրքն եղանակեն. Միայն սուրբ" եւն: J վերը տող 1097: — EGHIKMN "Եւ քհն. առնու" եւն (= O, իսկ PQS "առցէ".) — EGIKMN "...ի ձեռն եւ սրկ." եւն (= OU.) ACH "...ի ձեռն եւ սրկն." (= PQ. բայց S "...ի ձեռս եւ սրկն." եւն.) — EGHIKMN "ձայնէ բարձր:" Դպրութիւնք (bt եւն) "Եւ սրկն. ձայնէ բարձր:" ‖1101–1104 EGHIKMN "Եւ քհն. բարձրացուցանէ (N զսրբութիւն) ակներեւ ժողովրդեանն (N ժողովրդեան) եւ ասէ." (GH "եւ ասէ ի ձայն:") Տպագիրներէն՝ O "...բարձրացուցանէ ակն երեւ... եւ ասէ." (RS ալ "ասէ":) PQ "...բարձրացուցանէ ակներեւ ամենայն (= S) ժողովրդեանն եւ ասասցէ ի ձայն:" J անխորագիր կամ լոկ "ՔՀ.:" ‖1101 EM "Ի սրբութիւնս սրբոց". a "Սրբութիւն սրբոց.": GK հոս կցեն "Բարձրեալ ես դու Աստուած ես յամենայն երկիր (= F): Եւ քհն. դարձեալ վերացուցանէ զսկիհն սուրբ արեամբն եւ ասէ. Բարձր արարեր զՏէր Աստուած մեր. երկիր պագէք ի պատուանդան ոտից (F Նորա, "զի սուրբ է տէր Աստուած մեր:) Ժողովուրդն. Միայն սուրբ" եւն: Ուստի յաւելուածոյ մասս ունի նաեւ F. միայն առաջին կէսը BN². (տես վերը Հատ. ԻԸ սկիզբն): Միւսները եւ ՏՊ. չունին: ‖1101–1104 E չունի հոս "Միայն սուրբ" եւն, այլ քիչ մ'եւքը (տող 1107:) — "Դպիրքն բարձր ձայնիւ" ըստ OPQS. իսկ ՏԱ եւ 22 "Ժողովուրդն բարձր ձայնիւ." (EGHKM լոկ "Ժող.", J "Դպ.:") — A "...Աստուծոյ Հաւր: Ժող. Ամէն:" Հոս եւ յաջորդաց մէջ այս "Դպ. Ամէն" եւ "Սրկ. Աւրհնեա տէր" կանոնաւորապէս ունին Դպրութիւնք abej եւ տպագիրք R²V²tv: Ձեռագրաց ոմանք (EGHM եւն որ "Ժող. Ամէն") ունին եւ ոմանք ոչ ամէնք: ‖1104 F "Աւրհնեա Որդի սուրբ" եւն: N երեք անգամն ալ "...Աւրհնեալ... ճշմարիտ: Ամէն"՝ կցելով: ‖1106 F "Աւր-

Քհն. Աւրհնութիւն եւ փառք Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։ — Դպ. Ամէն։ Հայր սուրբ, Որդիդ սուրբ, Հոգիդ սուրբ։ Աւրհնութիւն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Եւ մինչ նոքա երգեն զայս, քհն. խոնարհեսցի եւ աղաւթեսցէ ի ծածուկ. Նայեաց տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից ի սրբութենէ քումմէ եւ յաթոռոյ փառաց թագաւորութեան քո։ Եկ ի սրբել եւ ի կեցուցանել զմեզ՝ որ ընդ Հաւր նստիս, եւ աստ պատարագիս։ Արժանի արա տալ մեզ յանարատ մարմնոյ քումմէ եւ ի պատուական յարենէ եւ ի ձեռս մեր ամենայն ժողովրդեանս։

Եւ զայս ասացեալ երկրպագեսցէ եւ համբուրեսցէ զսեղանն, եւ առեալ զսուրբ մարմինն ողջ թացցէ յանապականն արիւնն, եւ ասասցէ. Տէր Աստուած մեր, որ կոչեցեր զմեզ յանուն միածնի Որդւոյ քոյ քրիստոնեայս, եւ շնորհեցեր մեզ մկրտութիւն հոգեւոր աւազանաւն ի թողութիւն մեղաց,

---

հնեալ Հոգի սուրբ" եւն։ ‖1107 E հոս "...Աւրհնեալ Հոգիդ...։ Ժողն. Ամէն։ Քհն. Միայն սուրբ, միայն տէր Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հաւր. ամէն։ Աւրհնութիւն եւ փառք" եւն։ ‖1107–1108 "Աւրհնութիւն եւ փառք" եւն կտորը չունի J։ ‖1108–1110 Տողը "Հայր սուրբ" ունին բոլոր 22. (A–N) թէեւ C ուրիշ տեղ (տող 1117), եւ Դպրութիւնք abegjklmnopq եւ տպագիրք R²V²stv։ — Սկզբան "Ամէն" չունին EGHM եւ lkmn. ունին միւսները։ — ACJ եւ q "...Որդի սուրբ, Հոգի սուրբ" եւն։ — HJM եւ lmnos "եւ սրբոյ Հոգւոյն" (= V²t. միւսներն ընդհանրապէս մեր գրածին պէս, ի միջի այլոց ACDGK)։ ‖1111 C խորագիրս եւ աղօթքս չունի հոս, այլ ուրիշ տեղ (տես տող 1101). նոյնպէս ուրիշ տեղ ունին J (տող 1097) եւ BDFN² (տես Համ. ԻԸ սկիզբը)։ — AEGHIKMN "Եւ մինչ նոքա երգեն (= OPQ) զայս, քհն. խոնարհի եւ աղաւթէ ի ծածուկ." (AH "խոնարհի եւ ասէ ի ծածուկ." GK "խոնարհի եւ ասէ զաղաւթս ի ծածուկ." N չունի "խոնարհի եւ"։) ‖1112 ABCDFGIMNN² "Նայեա." EHK "Նայեայ." ՏՊ "Նայեաց"։ ‖1113 BD "...թագաւորութեանդ քո." իսկ N² "յաթոռոյ փառաց է օրհնութեան քո"։ ‖1115 BDF "յանարատ մարմնոյս քո" եւն։ — ABDEFGHIKMN "եւ ի պատուական արենէ.. (BG արենէս." F "յարենէս։") բառ առ. N² "եւ ի պատուական յարենէ"։ — ACDEHIMNN² "եւ ի ձեռն մեր" եւն (= OPQS). BGK բառ ՏԱ "եւ ի ձեռս մեր" եւն. իսկ F "եւ ի ձեռս ամենայն ժողովրդեանս, եւ քեզ վայելէ փառք ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյդ, այժմ." վերջաւորութիւնս ունին նոյնպէս նաեւ GKN² եւ BD ("եւ քեզ ...Հոգւոյդ ամէն։") ‖1117–1118 C խորագրին տեղ հոս "Դպ. Հայր սուրբ" եւն (տող 1108)։ Մինչ նոքա երգեն, քհն. երկիրպագէ եւ համբուրէ զսուրբ սեղանն եւ առեալ զսուրբ մարմինն թանայ ողջ յանապականն արիւնն եւ ասէ. Տէր Աստուած" եւն։ J պարզապէս "Զսուրբ հացն ողջ մկրտէ ի մասնամբն եւ ասէ զաղօթս. Տէր" եւն։ BD չունին խորագիրս, նոյնները եւ FN² տես Համ. ԻԸ սկիզբը։ Միւսներն բառ առ.։ AEGHIKMN "...երկիրպագէ եւ համբուրէ... թանայ յանապականն արիւնն եւ ասէ." (H "ասելով." E "թանայ յանապականն եւ ասէ". GK "թանայ յանապականն արիւնն, եւ ի մկրտելն ահիւ եւ արտասուօք ասէ զաղաւթս։") Տպագիրներէն՝ OPQRSU "երկրպագեսցէ." իսկ O նաեւ "թանայ։" ‖1119 BDF "յանուն Միածնի որդւոյ քոյ քրիստոնեայս" եւն. J "յանուն քում Որդւոյ քրիստոնեայս" եւն։

եւ արժանի արարեր զմեզ հաղորդիլ սուրբ մարմնոյ եւ արեան միածնի քոյ։ Եւ այժմ աղաչեմք զքեզ տէր, արա զմեզ արժանի ընդունել զսուրբ խորհուրդս զայս մեզ ի մեղաց թողութիւն։ Եւ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։ — *Սարկաւ.* Աւրհնեա տէր։

*Եւ բարձրացուցէ ակներեւ ժողովրդեանն, եւ ասասցէ առ նոսա բարձր.* Ի սուրբ ի սուրբ պատուական մարմնոյ եւ յարենէ տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ՝ որ իջեալ ի յերկնից բաշխի ի միջի մերում։ Սա է կեանք, † յոյս, յարութիւն, քաւութիւն եւ թողութիւն մեղաց։ Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ, սաղմոս ասացէք երկնաւոր թագաւորիս մերոյ անմահի, որ նստի ի կառս քերովբէականս։

*Սարկաւագն ձայնեսցէ բարձր.* Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ դպիրք ձայնիւ քաղցրութեան զերգս հոգեւորս։ Զի սմա վայելեն սաղ-

‖[1121] BDJ «եւ արժանաւորս արարեր» եւն. — M «արարեր հաղորդիլ» եւն (չունի «զմեզ.») — B «...արարեր զմեզ հաղորդութեան սուրբ մարմնոյ» եւն. — DJ «հաղորդել մարմնոյ» եւն (չունի «սուրբ.») — J «արեան Միածնիդ» (չունի «քոյ»)։ ‖[1122] BDJ «Աղաչեմք զքեզ Տէր, արա եւ այժմ արժանի ընդունել զհաղորդութիւնս զայս մեզ» եւն։ F «Եւ այժմ աղաչեմ զքեզ» եւն՝ մնացեալ ըստ ալ.։ Տպագրին համեմատ են միւսներն ալ ACEGHIKMN, (միայն N «...զխորհուրդս զայս մեղաց թողութիւն» եւն։) ‖[1123] D «մեզ ի մ[եղաց]...» մնացեալը պակաս՝ թուղթ ինկած ըլլալով (Թղ. 143էն ետքը)։ Նոյնպէս թուղթ ինկած է ի N (Թղ. 58էն ետքը) եւ կը հասնի մինչեւ «...մեղաց թողութիւն. եւ» մնացեալը չկայ այժմ։ — ABEJ «եւ գոհանալով փառաւորել» եւն (փխ. «գոհութեամբ» ըստ այլոց CDFGHI եւն)։ ‖[1124] J «...փառաւորել զՀայր եւ զՈրդի եւ։» ‖[1126] Խորագրիս տեղ B. «Եւ վերայուցեալ զսուրբ մարմինն ակներեւ ժողովրդեանն եւ ասէ բարձր.» F եւ GK «Եւ խոնարհութեամբ վերայուցեալ քհն. զսուրբ մարմինն եւ զարիւնն Տեառն ի սրբոյ (GK ի սուրբ) սեղանոյն եւ բերցէ ի տեսութիւն ժողովրդեանն եւ ասէ բարձր ղաղաւթս (GK զաղաւթս բարձր.) Ի սուրբ» եւն։ J ամբողջին տեղ՝ «Դառնա առ ժողովուրդն եւ ասէ։» Միւսներն ըստ ալ. ACEHIM «Եւ բարձրացուցանէ (= O) ակներեւ (O ակն երեւ) ժողովրդեանն եւ ասէ առ նոսա բարձր.» (CI «եւ ասէ զբարձր.» H «ասէ առ նոսա բարձրաձայն։») Տպագիրներէն PQ կ'րսեն վերջը՝ «...եւ ասասցէ առ նոսա բարձր։» ‖[1127] F «...պատուական մարմնոյս եւ յարենէս տեառնս մերոյ» եւն. J «...մարմնոյ եւ արենէ» եւն։ ‖[1128] AEGHIJKM «որ իջեալ յերկնից» (փխ. «...ի յերկնից» ըստ այլոց եւ ՏՊ.։) ‖[1129] H «յոյս յարութեան» եւն։ J «յոյս յարութեան ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց» եւն։ ‖[1130] H չունի «Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ» խօսքը։ — BE «Սաղմոս ասացէք Աստուծոյ» եւն (չունին «տեառն»։) — Միայն PQ «...տեառն Աստուծոյ մերում.» OS եւ ՏԱ եւ 22 «մերոյ»։ ‖[1131] JK «երկնաւոր թագաւորին մերոյ անմահի.» F «...թագաւորիս մերոյ անմահ.» OPQS «...թագաւորիս մերում անմահի. (բոլոր 22 եւ ՏԱ հոն ալ «...մերում...։») — H «որ նստիս ի կառս» եւն։ — J կը կցէ վերջը՝ «Զի սմա վայելեն սաղմոսք» եւն՝ կցելով հոն յաջորդին կէսը (տես տող 1133), առաջին կէսը չունենալով։ ‖[1132] Խորագիրն՝ BF «Սրկ. քարոզէ.» AE լոկ «Սրկ.» (= $V^2$). GK «Սրկ. ձայնիւ բարձր (K բարձր ձայնիւ) ասէ.» H «Սրկ. ձայնէ։» Միւսներն ըստ ալ. (CIM «ձայնէ», C «ի բարձր.» O «Եւ սրկ. ձայնեսցէ բարձր.» PQS չունին

*մուք եւ աւրհնութիւնք, ալէլուք եւ երգք հոգեւորք: Պաշտաւնեայք,*
1135 *հանդերձ երգով սաղմոս ասացէք, եւ զտէր յերկինս աւրհնեցէք:*

*Դպիրքն. Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի մերում. Ալէլ: — Զմարմին իւր տայ մեզ կերակուր, եւ սուրբ զարիւն իւր ցուղէ ի մեզ: Ալէլուիա: — Մատիք առ տէր եւ առէք զլոյս. Ալէլուիա: — Ճաշակեցէք եւ տեսէք զի քաղցր է տէր. Ալէլուիա: — Աւրհնեցէք զտէր յերկինս. Ալէլուիա: — Աւրհ-*

---

«բարձր:») — «Սաղմոս ասացէք» են ունին ՃՃ. եւ Դպրութիւնք $I^{2}$be եւ տպագիրք $R^{2}V^{2}$stv. Դպրութեանց մէջ սակէ յառաջ ուրիշ խրատագիր մ՚ալ կայ, այսինքն (բաց $R^{2}$tv եւ b, իսկ e չունի)՝ «Եւ խաշակիցէ քհն. սկսմի (v սկսնով) ի վերայ ժողովրդեանն, (bv եւ դառնայ ի սուրբ սեղանն.) եւ քարոզեն զխորադոյրն: Եւ քարոզէ սրկն. բարձր:» — OPQ «...Աստուծոյ մերում», այլք «մերայ:» ‖1133 «Դպիրքն» բառը չունի $N^{2}$. յետոյ «զի սմա վայելէ սաղմոսք» են: ($V^{2}$ «վայել են»:) ‖1134 E «սաղմոսք եւ աւրհնութիւն» են: — A «եւ երգ հոգեւորք» են: — C «Պաշտաւնեայք Քրիստոսի հանդերձ» են: ‖1135 Դպրութիւնքն bv «հանդերձ երգովք» են. միւսները եւ ՃՃ. եզակի ունին: — J վերջը միայն, տես տող 1131: ‖1136 «Քրիստոս պատարագեալ» տողը ունին ՃՃ. (ABCEGHJM$N^{2}$, իսկ D$NI^{2}$ պակասաւոր եւ թուղթ ինկած ըլլալով չունին, FKI սկիզբը միայն կը յիշեն.) ունին նաեւ Դպրութիւնք abegjklmnopq եւ տպագիրք $R^{2}V^{2}$stv. տպագիր խորհրդատետրները սկիզբը միայն կը դնեն: — Խորագիրը պարզ «Դպ.» ունին Դպրութիւնք (bcv են) եւ J. առանց խորագրի է A, իսկ BCEGHM$N^{2}$ «Դպիրքն եղանակեն (= O.) Քրիստոս պատարագեալ» են, իսկ B$N^{2}$ «Դպ. եղանակեն. Աւրհնեալ է Աստուած. Քրիստոս» են: H «Աւրհնեա ի նմանութիւն աղ.: Դպ. եղանակեն» են: E եւ PQ «Եւ դպիրքն եղանակեսցեն.» OS եւ ՏԱ «Դպիրքն եղանակեսցեն:» Դպրութիւններէն ալ l «Երգ ճաշակման սուրբ խորհրդոյն.» q՝ «Երգ բաշխման սուրբ խորհրդոյն». (տես նաեւ տող 1138:) Սկզբնաւորութիւնը միայն կը յիշեն F՝ «Դպիրքն եղանակեն քաղցր ձայնիւ. Աւրհնեալ է Աստուած: Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի. ի այլն է հետ կարգին. Երգ փոխան Ներսեսի. Մատիք առ Տէր եւ առէք: Եւ մինչ նորա» են: K «Դպիրք եղանակեն. Քրիստոս պատարագեալ բաշխի ի միջի մերում, ալէլուիա: Զմար. ի այլն բոլոր ցուցակի. Եւ մինչ նորա» են: I «Դպիրքն եղանակեն. Քրիստոս պատարագեալ բաշխի: Մինչ նորա» են: ‖1136 MN «Մարմին իւր» են. E «զմարմինն իւր» են: ‖1137 Այս տողն երկուքի կը բաժնեն ABEGJ$N^{2}$ եւ ajkm՝ «...մեզ կերակուր. Ալէլուիա: Եւ սուրբ զարիւն (BGms զարիւնն) իւր ցուղէ ($N^{2}$ ցուղեայ) ի մեզ. Ալէլուիա:» Տպագիր Դպրութեանց պէս մէջ տուն ունին միւսները՝ CHM եւ begnopq: — Հոս այս տան կը կցեն kl «Աւրհնեցէք զտէր յերկինս. ալէլուիա: Մատիք» են: ‖1138 «Մատիք առ տէր» են տունը չունի G. ունին միւսները, բայց oklp այս եւ յաջորդները բաժնուած ունին (բաց Լամբրոնեանի) յաջորդ տողերու սկիզբն, այսպէս. «Երգ փոխան Ներսեսի է բաշխելն կարգ. (e «ի բաշխման սուրբ խո.» o չունի խորագիրս. տես F ի տողն 1136:) Մատիք առ տէր եւ առէք զլոյս: Լոյս ծագմամբ, են (տող 1143): Ճաշակեցէք եւ տեսէք զի քաղցր է Տէր, ալէ.: Հայր կենաց, են (տող 1146): Աւրհնեցէք զտէր յերկինս, ալ.: Դասք երկնից, են (տող 1149): Աւրհնեցէք զնա ի բարձունս, ալ.: Բան Հայր, են (տող 1152): Աւրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա, ալ.: Անմահ հօր, են (տող 1155): Աւրհնեցէք զնա ամենայն զաւրութիւնք նորա, ալ.: Գառն Աստուծոյ զենեալ» են (տող 1158): Միայն op ունին այս տանց առջեւ «Բշ.» «Գշ.» են խրատագրերը, տես վարը: ‖1139 «Ճաշակեցէք» են տան վերջը կը յաւելու m տուն մ՚ալ՝ «Զի յաւիտեան է ողորմութիւն նորա, ալէլուիա: Օրհնեցէք» են: ‖1140 $N^{2}$moklp «ի բարձանց» (փխ. «ի բարձունս», բայց $N^{2}$ յետոյ բաց վերջնոյս ուղղուած): — Jajm ասկէ

*նեցէք զնա ի բարձունս. Ալէլուիա։ — Աւրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա. Ալէլուիա։ — Աւրհնեցէք զնա ամենայն զաւրութիւնք նորա. Ալէլուիա։*

*(Բշ.) Լոյս ճշմարիտ եւ ճառագայթ Հաւր, ծագումն եւ կնիք, բան եւ ծնունդ, որ կանգնեցեր յեաւթեանց սեանց զեկեղեցի սուրբ, ածեալ ի սպանդ զեզն պարարակ։ Շնորհեա մեզ կերակրիլ յիմաստութեան սեղանոյ քում. Ողորմեա։ — (Գշ.) Հաց կենաց եւ անմահութեան ճաշակ, սուրբ եւ անճառ սոսկալի խորհուրդ, որ ի յերկնից իջեր կենդանութիւն մարդկան, կենդանի եւ կենդանարար. պարգեւեա քաղցելոցս զքաղցրութեան քում ճաշակումն. Ողորմեա։ — (Դշ.) Դուռն երկնից եւ ճանապարհ արքայութեան, տէր երկնի, ի յերկնայնոցն աւրհնեալ դասուց, որ զմարմին քո եւ զարիւն բաշխեցեր առաքելոցն. մաքրեա զմեզ հաղորդիլ սրբութեան քում խորհրդոյ. Ողորմեա։ — (Եշ.) Բան Հաւր եւ քահանայապետ սուրբ, յանմարմնոցն գովեալ ի բարձունս. որ ի վերայ խաչին պատարագեալ մարմնով՝ հեղեր զարիւնդ ի փրկութիւն. սրբեա զմեղս մեր կենարար եւ փրկական քաւիչ քո արեամբդ. Ողորմեա։ — (Ուրբ.) Վէմ հոգեւոր եւ գլուխ անկեան աւծեալ, բարեբանեալ ի հրեշտակաց. որ ի խաչին բացեր զկողահոս աղբիւրդ, զանմահութիւն ցաւղեալ տիեզերաց. արբո մեզ ծարաւեացս զբաժակ քո փրկութեան. Ողորմեա։ — (Շբ.) Գառն Աստուծոյ*

---

տաղը՝ “Աւրհնեցէք զնա հրեշտակք եւ ամենայն զաւրութիւնք նորա ալէլուիա„, կցելով երկու տուները մէկի։ — Միւսներէն CEMa “Աւրհնեցէք զնա հրեշտակք (CE հրեշտակ) նորա„ են։ ‖1143 Ասկէ ցտող 1161, ուստի “Լոյս ճշմարիտ„ են բոլոր մանրագիրները չ—ին AHEGN$^2$, թող պակասաւորները եւ թերթերը (տես տող 1136). բայց BDI$^2$ այլեւայլ տեղերուն կը սկսին դարձեալ։ Ունին Դպրութեանց մեծագոյն մասը՝ abegklnopq եւ տպագիրք R$^2$V$^2$st, բայց m չունի, այլ սանց տեղ (Թղ. 59բ—61բ) տաղեր “Ինչպէս մարդիկ ամենայն... Հոգւոյ այս մարմին... Որք անմտաբար„ են. չունի նոյնպէս j, այլ հոս սանց տեղ՝ “Գառն Աստուծոյ որ բառնաս զմեղս աշխարհի, ողորմեա մեզ։ Գառն Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի, տուր զխաղաղութիւն„ են։ Տպագիրներէն v չունի զասոնք ի կարգի, բայց ունի խորագիրս՝ “Եւ դպիրքն երգեն զտաղս խորհրդաւորս ըստ պատշաճի աւուրն։„ Իսկ s ունի յետոյ (էջ 147) նախ այլեւայլ գանձեր ունենալով, բայց st այլեւայլ տպագրութիւնքն (տպ. 1716, 1726 եւ 1730) ունին հոս ի կարգին, ուստի առանց միջարկութեան այն գանձուց։ — Սկիզբը Jaj խորագիր մ'ունին՝ “Տեառն Ներսէսի ասացեալ երգ բաշխման սուրբ խորհրդոյն. (J չունի “սուրբ խորհրդոյն.„) Լոյս„ են։ Միւսները begqop “Բշ.„ միայն։ ‖1144 Jacgklnopq “յեւթանց„։ ‖1145 Je “կերակրիլ իմաստութեան„ են. Jagk “... քում սեղանոյ„ (միւսները “... սեղանոյ քում„)։ ‖1146—1149 Jabegq “Գշ.„, lk չունի բան մը։ — Տպագիրք կը սրրհեն “Հաց կենաց եւ անմահութեան, ճաշակ„ են. յաջորդը b՝ “...ճաշակ, սուրբ եւ անճառ սոսկալի խորհուրդ„ են. — an “քաղցելոց.„ — e “զքաղցրութեան քում ճաշակումն„ են։ ‖1149—1152 Jabegq “Դշ.„ lk չունին. — Ja “տէր յերկնից՝ յերկնայնոց„ են. — e “տէր յերկնի՝ երկնայնոցն„ են. gnopq “տէր երկնի՝ յերկնայնոցն„ են. bek են ըստ տպ.) — Ja “բաշխեցեր առաքելոց.„ — e “...քում խորհրդոյդ„ են. — q “...քում խորհրդոյ.„ են։ ‖1152—1155 Հոս կը սկսի B (Թղ. 156ա), որ եւ Jabegq “Եշ.„ խորագիրն ունին. lk չունին խորագիր. — alnp “...քաւիչ քո արեամբ„ են. (միւսներն ըստ տպ.։) ‖1155—1158 Հոս կը սկսի I$^2$ (Թղ. 29ա)։ Խորագիր չունի k, իսկ J “Ուր. a “Ուրբաթ., Bbeoq “Զշ.„ — l “...բարեբանեալդ ի հրեշտակաց„

զլինել միշտ եւ կենդանի, անմեղ եկեալ ի պատարագ, որ ի հաշտութիւն Հաւր պատարագեալ բառնաս զմեղս աշխարհի, յանմահից զաւրաց փառաւորեալ. յիշեա զհոգիս հաւատով ի քեզ ննջեցելոց մերոց. Ողորմեա։

## ՆԱԽԱՀԱՂՈՐԴԱԿԱՆՔ

**Իժ·** — *Մինչ դպիրքն երգիցեն, քահանայն առցէ զմարմինն ի ձեռն. եւ համբուրեսցէ արտասուաք ասելով զայս.* Զոր աւրհնութիւն, կամ զոր գոհութիւն ի վերայ հացիս եւ բաժակիս մատուցուք. այլ Յիսուս զքեզ միայն աւրհնեմք համակեալ Հաւրդ եւ ամենասուրբ Հոգւովդ. այժմ եւ միշտ

---

եւն. — I²Jabegklnopqs "զկողմհոս [illegible]." — a "...յարքս եւ մեզ" եւն. — el "զբաժակ քո [illegible]" եւն (միւսներն բառ առ.)։ ‖1158—1161 Հոս կը սկսի D (Թղ. 144ա) "Գառն Աստուծոյ" եւն։ — Խորագիր չունի K. — Ամէնքն "...եկեալ ի պատարագ." (Rst եւ b "ի պատարագս.") — Ամէնքը (BI²Ja—qs) "...ննջեցելոց մերոց" եւն. (R²t "ննջեցելոցն" եւն։) — Հոս ի վերջոյ Ja կը յաւելուն տուն մ'ալ՝ "Այլ. Գառն Աստուծոյ որ բառնաս զմեղս աշխարհի, տուր մեզ զխաղաղութիւն." (տես տող 1163։) Հոս կը կցէ առանց տեղ a "Որ է [illegible]" եւն տաղը (Թղ. 120բ եւն.) յետոյ ·Դարձեալ [illegible] տաւնից ասա. Հայր [illegible], եւն։ Եւ հաղորդին արժանաւորքն. Մայր [illegible]" եւն։

**Իթ.** ‖1163—1164 Խրատագրին տեղ հոս եւ յաջորդքն շատ տարբեր ունին BDF, (տես վերն), որոնց կարգէն է N²՝ "Եւ մինչդեռ նոքա եղանակեն, քհն. բաշխէ զմարմինն եւ արկանէ ի բաժակ արեան ասելով. Լ... Հ...։ Եւ առեալ զմի մասն եւ համբուրէ եւ ասէ զաղօթս. Խ... ... աշխարհի, ...։ Գառն Աստուծոյ որ բառնաս զմեղս աշխարհի, ...։ Երիցս անգամ կրկնէ ասելով. Գառն Աստուծոյ որ բառն.։ Եւ ասէ զաղօթս. Զոր ... կամ զոր ..., եւն։ Բեկանէ զնշխարն Դ. բաժին, եւ Գ. բաժինն խաչանման դնէ, եւ զԱ. բաժին առնու ի ձեռն զգուշութեամբ, եւ ասէ զաղօթս. Հայր ..." եւն։ Նոյն կարգաւ եւ նոյնպէս (նաեւ "Գառն Աստուծոյ") ունին BDF. — Խրատագիրն՝ A "Եւ ի նոցա երգելն բաշխէ քհն. եւ ասէ. Զոր աւրհնութիւն" եւն. (մանր գրով կցուած ի լուս. "Գուշն ասէ յերկոտասան մասունս բաժանեա ի խորհուրդ երկոտասան առաքելոց եւ ի միութիւն ԲԺ. անդամոց մերոց.") E՝ "Եւ ի նոցա երգելն բաշխէ քհն. զհացն կենաց ի Դ մասունս եւ կամ ԺԲ. մահ[ր] մասն եւ ասէ. Զոր աւրհնութիւն" եւն։ CGHIKM (բառ առ.) "Մինչ նոքա երգեն (= OPQ), քհն. առնու (= O. իսկ CGHK կցեն "զսուրբ") մարմինն (I զմարմինն սուրբ) ի ձեռն (= PQSRTU, իսկ M "ի ձեռան" = O) եւ համբուրէ (= O) արտասուաւք ասելով" (այսպէս CI = PQS, իսկ M "զայս ասելով." GK "ասելով այսպէս." H "եւ ասէ")։ Վերջապէս J ալ տարբեր է այս եւ յաջորդ խրատագիրքը չունենալով՝ "Եւ մինչ դպ. եղանակեն, քհ. աղօթէ ի ծածուկ. Խ... ...։ Զո՞ր ...։ Լ... ։ Հայր ..." եւն։ ‖1164 "Զոր աւրհնութիւն" աղօթքս այլ ձեւով ունին BDFJN², այսինքն՝ "Զոր աւրհնութիւն կամ զոր գոհութիւն կամ զոր պատարագ (այսպէս D. իսկ BFJ "զոր աւրհնութիւն կամ զոր պատարագ կամ զոր գոհութիւն." N² "զոր աւրհնութիւն կամ զոր ... կամ զոր պատարագ) ի բեկանել հացիս (N² եւ ի վերայ բաժակիս) աւանդեսցուք, այլ զքեզ (D քեզ) միայն Տէր Յիսուս փառաւորեմք տէր (N² չունի "տէր") զքո առաքեալ (N² առաքելովդ) Հաւր անուն." (F կցէ "համդերձ Հարբ եւ ամենասուրբ Հոգւոյդ այժմ եւ։") Միւսներն բառ առ. — CEGHKM "համդերձ Հարբ եւ" եւն (= OS. իսկ I եւ ՏՊ "Հարբդ".) — K "...եւ ամենասուրբ Հոգւոյդ" եւն։ ‖1167 CGHIKM "Դարձեալ ասէ."

եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն: — Դպիրն ասասցէ. Խոստովանիմ եւ հաւատամ, զի դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի: — Եւ բեկեալ արկցէ ի բաժակն արեան ասելով. Լրումն Հոգւոյն սրբոյ:

Լ. — Եւ ապա առեալ զմի մասն ի ձեռս իւր, ասասցէ ի ծածուկ արտասուաւք եւ զղջմամբ առ Հայր. [Բն.] Հայր սուրբ, որ անուանեցեր զմեզ անուանակցութեամբ միածնի քոյ, եւ լուսաւորեցեր մկրտութեամբ հոգեւոր աւազանին: Արժանի արա ընդունել զսուրբ խորհուրդս զայս մեզ ի մեղաց թողութիւն: Տպաւորեա ի մեզ զշնորհս Հոգւոյդ սրբոյ՝ որպէս ի սուրբ առաքեալսն, որք ճաշակեցին, եւ եղեն մաքրիչք ամենայն աշխարհի: Եւ արդ տէր Հայր բարերար, զհաղորդութիւնս զայս մատուցերես ճաշակման երեկոյին աշակերտացն՝ բառնալով զխաւար մեղաց իմոց: Մի հայիր յանարժանութիւնս իմ. եւ մի արգելուր զշնորհս Հոգւոյդ սրբոյ: Այլ ըստ անբաւ մարդասիրութեան քոյ պարգեւեա զսա քաւիչ մեղաց, լուծիչ յանցանաց: Որպէս խոստացաւ եւ ասաց տէր մեր Յիսուս Քրիստոս, թէ որ ուտէ զմար-

(= O.) AE «Եւ առեալ մասն մի ասէ:» Աղօթքը «Խոստովանիմ» եւն այնպէս ունին նաեւ BDFJN²: ‖1168 D «...դու ես Քրիստոսն» եւն. — FJ «...աշխարհի, ողորմեա մեզ:» GK «...աշխարհի: Որդի Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի, ողորմեա մեզ: Երիցն կրկնէ: Եւ բեկեալ» եւն: ‖1169 A չունի ոչ խրատագիրն «Եւ բեկեալ» եւն, ոչ «Լրումն» եւն, այլ կցէ աղօթքը «Հայր սուրբ» եւն (Համ. Լ.) լուսանցքի վրայ նշանակելով «Ոսկ.» (Ոսկեբերանի): E ալ չունի խրատագիրը, բայց ունի «Լրումն» եւն: Խրատագիրը՝ CH «Եւ բեկեալ արկանէ ի բաժակն ասելով.» GKIM «Եւ բեկեալ արկանէ (GK խաչանման) ի բաժակն արեան ասելով:» — «Լրումն» եւն ըստ 22. (I «Լրումն Հոգւոյդ սրբոյ.» D «...Հոգւոյն սրբոյ:») J կը կցէ խրատագիր մը թէ «Գ անգամ ասա:»

Լ. ‖1170–1171 Խրատագիր չունին հոս A եւ J, իսկ BDN² պարզապէս «Եւ ասէ (D եւ ապա զաղաւթս առ Հայր.)» F՝ «Եւ ապա բաշխէ զմասն, զերիս խաչանման արկանէ ի բաժակ արեանն եւ զմի մասն որ մնայ ի ձեռսն՝ զայն համբուրեսցէ արտասուաւք եւ ոգւով մեծաւ եւ ասէ զաղաւթս:» նաեւ E լոկ «Դարձեալ ասէ զաղաւթս:» Միւսներն ունին տպագրեալ խորագիրս, բայց քանի մը տարբերութեամբ: — Սկիզբը I «Առեալ քհն. զմի մասն ի ձեռն իւր» եւն. (V² «Ցայսմ վայրի քհն. առեալ» եւն.) C «Եւ ապա առեալ զմի մասն ի ձեռն իւր ասէ» եւն. — CGHKM «ի ձեռն իւր» (= ORSU, իսկ PQ «ի ձեռն»՝ առանց «իւր» դերանուան. միւս տպագիրք «ի ձեռս իւր».) — CIM ...իւր՝ ասէ ի ծածուկ» եւն (= O.) GHK «Եւ ասէ ի ծածուկ,» եւն. — PQ չունին հոս «ի ծածուկ» այլ յետոյ. — CGHKM «...առ Հայր եւ Որդի.» (= OS, բայց O. «եւ յՈրդի» կ՚ըսէ) իսկ PQ «...առ Հայր եւ Որդի ի ծածուկ:» — Աղօթքս «Հայր սուրբ» եւն ունին ամէն 22, միայն M կը նշանակէ լուսանցքի վրայ թէ «Աթանասեայ է աղօթքն, կամ Ոսկեբերանի»: Աղօթքս յատուկ է Սոփորականին, հնագոյնք՝ նաեւ Լամբրոնեանն՝ չունին աղօթքներս: ‖1173 PQS «...արժանի արա ընդունել» եւն: ‖1174—1175 N² «որպէս ի սուրբ առաքեալս... եղեն մաքրիչ ամենայն» եւն: ‖1175 «Եւ արդ» եւն բառերով կը սկսի դարձեալ N (Թղ. 59ա): ‖1177 N² եւ PQS «...զխաւար մեղաց.» (չունին «իմոց.» միւս ամէնքն ունին:) ‖1178 Բոլոր 22 (A—N²) «մի արգելցես զշնորհս» եւն (= OPQS.) իսկ SU մեր դրածին պէս «մի արգելուր» եւն: — E «...մարդասիրութեանն քո.» I «մարդասիրութեանդ քո». BDF «մարդասիրութեան քոյ» (= OPQS.) ‖1180 D «Որպէս խոստացար եւ ասացեր Տէր

*մին իմ, եւ ըմպէ զարիւն իմ, կեցցէ յաւիտեան։ Արդ արա զսա մեզ ի քաւութիւն, զի որք կերիցեն եւ արբցեն՝ ի սմանէ, հանցեն զաւրհնութիւն, եւ զփառս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· Ամէն.*

*Խաղաղութիւն † ամենեցուն։*

*Գոհանամ զքէն Քրիստոս Թագաւոր. որ արժանի արարեր զիս զանարժանս հաղորդել սուրբ մարմնոյ եւ արեան քոյ։ Եւ այժմ աղաչեմ զքեզ. մի լիցի սա ինձ ի դատապարտութիւն, այլ ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց, յառողջութիւն հոգւոյ եւ մարմնոյ եւ ի կատարումն ամենայն գործոց առաքինութեան։ Որպէս զի սրբեսցէ սա զշունչս իմ, զհոգի եւ զմարմին իմ. եւ արասցէ զիս տաճար եւ բնակարան ամենասուրբ Երրորդութեանդ։ Զի ընդ սուրբս քո արժանի եղէց փառաւորել զքեզ ընդ Հաւր եւ ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։*

*[Յովհաննու Ոսկեբերանին: Գոհանամ եւ մեծացուցանեմ եւ փառաւորեմ զքեզ տէր Աստուած իմ, զի զիս զանարժանս արժանացուցեր յաւուրս յայսմիկ՝ հաղորդակից լինել աստուածային եւ սոսկալի խորհրդոյ քոյ անարատ մարմնոյդ եւ պատուական արեանդ։ Վասն այսորիկ զսոսա ի բարե-*

---

մեր„ եւն։ — PQ "...եւ տաաց տէրն մեր„ եւն։ — Բոլոր 22· (A—N²) "...թէ Ամէնայն որ ուտէ„ եւն (= OPQS)։ ‖[1181] PQS "...կեցցէ ի յաւիտեան.„ (O եւ 22 բառ առ.։) ‖[1182] BDFN² "...ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց.„ (նոյնը նաեւ G՝ բայց լուսանցքի վրայ աւելցուած։) — N չփոթմամբ գուրս ձգեր է "ի սմանէ՝ հանցեն„ բառերը։ ‖[1183] FGIKN² "...եւ Հոգւոյն սրբոյ„ եւն։ ‖[1185] Այսպէս BDFGIIN² (N² կը կցէ "Աստուծոյ երկրպ.։„) CM "Խղ. ընդ ամենեսեան.„ (= RUTV.) իսկ AEN չունին այս տողն, այլ խրատագիրս՝ "Գործեալ սան՝ ին կամ.։„ — Աղօթքի այս երկրորդ մասն ալ ունին ամէն 22, հոս ալ M լուսանցքի վրայ նշանակելով՝ "Ա-ելուր է։„ ‖[1186] D "Գոհանամ+ զքէն„ եւն։ — PQS "...որ արժանի արարեր զանարժանս„ եւն (չունին "զիս„)։ ‖[1187] ABCDEIMN² "հաղորդել սուրբ մարմնոյ„ եւն. (FGKJN եւ ՏԳ. "հաղորդե!լ։„) — Բոլոր 22· "Եւ այժմ աղաչեմ„ եւն (չունին "Տէր„ = OS), միայն թէ BDFGK յետոյ կը կցեն "...աղաչեմ զքեզ Տէր„ եւն։ ‖[1189] PQ "...մեղաց, առողջութիւն հոգւոյ„ եւն։ ‖[1190] N "...գործոց առաքինութեանց։„ — CK "...զշունչ իմ„ եւն. (այլք "զշունչս„ բառ առ.։) ‖[1191] N² "...Երրորդութեան։„ ‖[1192ff] F "...արժանի եղէց յաւիտենից փառաւորել զքեզ ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյդ, այժմ։„ D "...արժանի եղէց փառաւորել զհայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին, այժմ„ եւն։ Միւսներն բառ առ., միայն EGHIKMN "...եւ ընդ սուրբ Հոգւոյդ„ եւն։ ‖[1194] Հոս կը կցեն ABDFGJKNN² ճաշակման մասն (Հմմ. ԼԱ) ուստի շարունակ երրորդ (միջանկեալ եւ փակագծեալ) աղօթքս։ Որին միայն CEHIM տեսն վերն էջ՝ 586, 611։ — Խորագիրը՝ C եւ ՏԱ. բառ մեր դրածին. E "Տեառն Յովհաննու Ոսկեբերանին.„ M "Յովհաննու Ոսկեբերան.„ H "Յովհաննու Ոսկեբերանի է.„ I՝ "Յովհաննու Ոսկեբերանին ասացեալ. ոչ տուէ, կամ+ ի է.„ ՏԲ "Յովհաննու Ոսկեբերանին ասացեալ աղօթք„ (OS "...աղօթ.„) M հոս ալ լուսանցքի վրայ նշանակած՝ "Ա-ելուր է։„ ‖[1195] H "...Աստուած մեր, զի„ եւն։ ‖[1196] EM "...յաւուր յայսմիկ„ (= OPQS. միւսները՝ "յաւուրս...։„) — EHI "հաղորդակից լինել„ մեր դրածին պէս (= SQ միւսները նաեւ OP

խաւսութիւն ունելով, աղաչեմ՝ յամենայն աւուրս եւ ի ժամանակս կենաց իմոց՝ ընդ սրբութեան քոյ պահեա զիս։ Որպէս զի յիշելով զբարեգթութիւնս քո, եւ կենդանի եղէց ընդ քեզ՝ որ վասն մեր չարչարեցար եւ մեռար եւ յարեար։ Մի մերժեսցի տէր իմ եւ Աստուած խորտակիչն, կնքելով անձին իմոյ պատուական արեամբդ քով։ Ամենակարաւղ՝ մաքրեա զիս ողջաւք յամենայն մեռելոտի գործոց իմոց, որ միայնդ ես անմեղ։ Ամրացո զկեանս իմ տէր յամենայն փորձութենէ. եւ զպատերազմաւղն իմ դարձո յետս պատկառեալ եւ ամաչեցեալ, որչափ յառնէ ի վերայ իմ։ Ամրացո զգնացս մտաց եւ լեզուի իմոյ, եւ զամենայն ճանապարհս մարմնոյ իմոյ։ Լեր հանապազորդ ընդ իս ըստ անսուտ խոստմանց քոց, թէ որ ուտէ զմարմին իմ, եւ ըմպէ զարիւն իմ, նա յիս բնակեսցէ, եւ ես ի նմա։ Դու ասացեր մարդասէր, կացո զբանս աստուածային անլուծանելի հրամանաց քոց։ Քանզի դու ես Աստուած ողորմութեան եւ գթութեան եւ մարդասիրութեան, եւ պարգեւիչ ամենայն բարեաց. եւ քեզ վայելէ փառք հանդերձ Հարբդ եւ ամենասուրբ Հոգւովդ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։]

## ՃԱՇԱԿՈՒՄՆ ԵՒ ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ

ԼԸ. — [Ու ապա տեառնագրեսցէ զինքն. եւ խնդրեսցէ ի ճշմարտէն Աստուծոյ զպէսպէս հայցուածս անձին իւրոյ եւ ժողովրդեան եւ աշխարհի. եւ

---

"...լինել„։) — PQUV "...խորհրդոյ ք-ոյ, անարատ„ եւն։ ||[1198] I չունի "կենաց„ բառը։ ||[1199] CEHM "ընդ սրբութեանդ քո„. (I ըստ ՏԳ.։) — I չունի "զիս„ բառը։ ||[1200] 22 (CEHIM) եւ ORUVTX "եւ կենդանի լինել ընդ քեզ„ եւն. (PQSV²W "եւ կենդանի եղէց„ եւն։) ||[1201] E "Մի մերժեսցի զիս, տէր„ եւն։ ||[1202] 22 (CEHIM) "...արեամբդ քո.„ (ՏԳ "...քով։„) ||[1204] CEHIM "...դարձո զնէն յետս„ եւն (= S)։ ||[1105] E "...ի վերայ իմ։ Որ ես հզաւր ամենակալն ես պաշտպան, ամրացոյ զգնացս„ եւն։ ||[1206] H "Լեր հանապազորդ զիս ըստ„ եւն։ ||[1208] OPQS "նա յիս բնակեսցէ„ եւն։ — H "...կեցո (փխ. "կացո.) զբանս„ եւն։ ||[1209] EIM "...անլուծանելի հրամանաց։ Քանզի„ եւն. (չունին "քոց։„ զոր ունին CH եւ ՏԳ.) ||[1210] H "...գթութեան, մարդասիրութեան„ եւն. (E "...գթութեան եւ մարդասիրութեանն„ եւն։) ||[1211] CEHIM "հանդերձ Հարբ եւ ամենասուրբ„ եւն. (ՏԳ "Հարբդ„ եւն։)

ԼԸ. BDF բոլորովին տարբեր ունին ճաշակս եւ յաղորդին մինչեւ կէտը (տող 1246), շատ բան ալ չունենալով. տես վերն էջ 572, § 19—21 եւ 581—582, § 28—30։ Անանց պէս N² այսպէս ունի ամբողջը՝ "Դարձեալ խնդրէ պէսպէս խնդրուածս ի ճշմարտէն Աստուծոյ՝ անձին իւրոյ եւ ամենայն ժողովրդեան եւ ամենայն ննջեցելոց եւ ամենայն աշխարհի, որչափ որ կարէ եւ զաւրէ յերկարութիւն երգեաց (այսպէս) եւ ասէ զողջոյն. Հաւատով հաստատեմ, եւն։ Եւ ապա ճաշակէ եւ ասէ. Հաւատով ճաշակեմ, եւն։ Եւ ըմպէ զբաժակն. Հաւատով ըմպեմ, եւն։ Առնու ի բաժակէն ճաշակ մի՝ եւ ասէ ի բանից Թովմայի առաքելոյն. Տէրն իմ.... եւ Աստուած իմ....։ Եւ ապայ հաղորդէին արժանաւորքն ի սեղանէն. թէ քհ. է՝ ինքն առցէ իւրոյն ձեռամբն իւրով ի մարմնոյ եւ յարենէ. իսկ եթէ սարկաւագ է՝ ի յափն նորա դիցէ զմասն, տացէ նմա եւ ի բաժակէն ճաշակ մի։ Եւ առնու քհն. ի սկիհն նշխարքն եւ դառնայ ի ժողովուրդն ասելով. Երկիւղիւ, եւն։ Եւ ժողովուրդն համբարձեալ զձեռս իւրեանց բացագլուխ եւ ասեն մի բերանով. Տէր Աստուած մեր, եւն։ Եւ հա-

*Թողութիւն խնդրեսցէ իւրոց յանցաւորացն Թշնամեաց եւ ատելեաց:] Եւ անդէն ահիւ եւ դողութեամբ ճաշակեսցէ ի մարմնոյն, եւ արբցէ ի բաժակէն ասելով: [Հաւատով հաւատամ յամենասուրբ Երրորդութիւնդ ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգիդ սուրբ: Հաւատով ճաշակեմ զսուրբ եւ զկենդանարար եւ*
1220 *զփրկագործ մարմինս քո Քրիստոս Աստուած իմ ի Թողութիւն մեղաց իմոց:*

---

*ղորդին արժանաւորքն, արք եւ կանայք, ծերք եւ տղայք ըստ աւրինին: Իսկ զկնի հաղորդութեան կնքէ քհն. զժողովուրդն ասելով զաղաւթս. Կեցո տէր, եւն: Եւ դառնա ի սեղանն եւ մաքրաջնջէ զնուէրն. իսկ դպիրքն եղանակեն եւ ասեն ձայնիւ. Լցաք, եւն: Եւ մինչդեռ նոքա եղանակեն, քհն. ասէ զաղաւթս. Պահպանեա զմեզ Քրիստոս Աստուած որ ըստ կամաց քոց ճաշակեցաք,, եւն (տող 1251, չունին BDFի հետ միւսները:) — J ալ շատ տարբեր, սկսելով առանց խորագրի՝ "Հայր սուրբ... Գոհանամ զքեն Քրիստոս Թագաւոր...) Հաւատամ ամենասուրբ Երրորդութիւն է Հայր եւ է Որդի եւ է Հոգին սուրբ: Հաւատով ճաշակեմ...: Հաւատով ըմպեմ...: Տէր տէր լերութիւն քեզ.: Լցաք տէր տէր աղաց է.: Արդ է բերան իմ աւրհնութիւն: Ա մեղեացի զլրութիւն իմ եւ հանցի շնորհնութիւն իմ, եւ զմեղս իմ որքեացի յինէն: Աէրտ սուրբ հաստատեա յիս Աստուած եւ: Հաւատամ Հայր սուրբ Աստուած ճշմ.: Հաւատամ Որդին սուրբ Աստուած ճշմ: Հաւատամ Հոգին սուրբ Աստուած ճշմ.. Հաւատովս խոստովանիմ, հաւատովս ճաշակեմ, զի այս է ճշմարիտ մարմին եւ արիւն Որդւոյն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի, որ տուեալ է մեզ ի թողութիւն եւ ի քաւութիւն մեղաց: Ճաշակէ ահիւ մեծաւ եւ ասէ զբերան իմ. Զբերան իմ բացի եւ առի զհոգի եւ ի պատարագս քո փափաքն: Մարմին քո... եւ սուրբ արիւն...: Դառնա առ ժողովուրդն եւ սկիհն ի ձեռն խաչակնքէ ի վերայ ժողովրդեանն ասելով. Երկիւղիւ, եւն: Եւ հաղորդին արժանաւորքն: Մայր հաւատոյ, եւն: Քհն. խաչակնքէ ի վերայ ժողովրդեան. Կեցո Տէր, եւն: Լցաք, եւն: Եւ ի կատարման ասէ զաղօթս քհն. ի ծածուկ. Գոհանամ զքեն որ զուարճացուցեր զմեզ ճաշակմամբ,, եւն (տող 1251:)*
‖[1214] *Խորագրիս առաջին (փակագծեալ) մասը չունին AE, իսկ J ամբողջին չունէր. BDFN² ալ կը սկսին "Փարձեալ խնդրէ զպէսպէս հայցուածս,, եւն, տես վերը: Միւսները CGHIKMN ունին տպագրաց հետ: — Միայն C "...տեառնագրէ.,, (GHKMN "տեառնագրեսցէ,, ըստ տպ.) — CGIKMN "եւ խնդրէ,,. (միայն H "խնդրեսցէ,, ըստ տպ.:)* ‖[1215] *J "...անձին իւրոյ եւ ամենայն աշխարհի եւ ժողովրդեան.,, նաեւ O "...եւ ամենայն ժողովրդեան եւ ամենայն աշխարհի.,, միւսներն ըստ տպ. (KMN "...ժողովրդեանն:,,)*
‖[1216] *GHIKMN "եւ Թողութիւն խնդրէ իւրոց յանցաւորացն (GKH եւ) Թշնամեայն (= OPQ, իսկ S ըստ տպ.) եւ ատելեայն.,, (= OPQ, իսկ GKS չունին "եւ ատելեայ,, բառերն.) C "...եւ Թողութիւն յանցանաց իւրոց եւ Թշնամեաց եւ ատելեաց, եւ ապա ահիւ,, եւն. O ըստ տպ. (միայն "...իւրոյ յանցաւորացն,, եւն:)* ‖[1217ff] *GK չունին "անդէն,, բառն, այլ յաջորդն այսպէս՝ "Եւ ահիւ եւ դողութեամբ ճաշակէ զմի մասն որ ի ձեռին իւրում, եւ ասէ այսպէս. Հաւատով հաւատամ...: Եւ երբ ճաշակէ ասէ զայս. Հաւատով ճաշակեմ...: Եւ առնու ի բաժակէն ճաշակ մի, եւ ըմպէ զնոյն եւ ասէ (K այսպէս.) Հաւատով ըմպեմ...: Եւ յետ ճաշակելոյ ի մարմնոյ եւ յարենէ տեառն, խաչհանցէ ի վերայ բերանոյ (K բերանոյն) իւրոյ եւ ասէ զբանս Թովմայի առաքելոյ. Մարմին քո,, եւն: — Միւսներէն՝ N "...ահիւ մեծաւ,, եւն. — GK "ճաշակէ,, ACEHIMN "ճաշակեսցէ ի մարմնոյ,, եւն ըստ տպ. — A "...ի մարմնոյն, արբցէ,, եւն. E "...եւ արբէ,, եւն. H "եւ արբցէ ի փրկական բաժակէն,, եւն. I "...արբցէ յարենէն ասելով.,, — վերջին "ասելով,, չունի E.*
‖[1218—1222] *Փակագծեալ ճաշակման ձեւերս ունին միայն BDFGJKN² եւ PQ. չունին ACEHIMN եւ OS եւ SU. բայց լաւագոյն է առանց գանուիլը: — Մանրամասնութեանց մէջ՝ սխալագիր ունի J առաջին մասն (տես վերն՝ Հանձիս.*

Հաւատով ըմպեմ զսրբարար եւ զմաքրիչ արիւնս քո Քրիստոս Աստուած Յիսուս ի թողութիւն մեղաց իմոց։] Մարմին քո անապական լիցի † ինձ ի կեանս։ Եւ սուրբ արիւն քո ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց։

Եւ թէ սարկաւագ կայցէ, հաղորդեսցի եւ նա։ Եւ առցէ սարկաւագն
զսկիհն, եւ դարձցի առ ժողովուրդն ասելով բարձր. Երկիւղիւ եւ հաւատով 1225
յառաջ մատիք, եւ սրբութեամբ հաղորդեցարուք։ — Դպ. բարձր. Աստուած մեր եւ տէր մեր երեւեցաւ մեզ։ Օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

---

սկիզբը.) N² "...եւ ի Հոգին սուրբ.. — B "...զսուրբ, զկենդանարար մարմին քո.„ DF "...զսուրբ մարմինդ (F մարմինս) քո„ եւն. N² եւ GJK "զսուրբ եւ զկենդանարար մարմինդ (GJK մարմինս) քո„ եւն, ուստի չունին "եւ զերկնաւոր„ բառերը, զոր չունին ուստի նաեւ GJK. այս բառերը դրինք ըստ PQ. — B "...մարմինս քո Քրիստոս.„ (առանց ուրիշ բառի.) DF "...Քրիստոս Աստուած իմ Յիսուս ի թողութիւն մեղաց իմոց.„ N² "..Քրիստոս Աստուած ի թողութիւն„ եւն. J "...Քրիստոս ի քաւութիւն եւ ի թողութիւն„ եւն. մենք դրինք ըստ PQ եւ GK. — J "Հաւատով ըմպեմ զանապական արիւնս„ եւն. — ամէնքը "արիւնս քո„, DF "արիւնդ քո„. — BN² "...քո Աստուած իմ Յիսուս ի թողութիւն մեղաց իմոց.„ (N² չունի "իմոց.„) իսկ J "...քո Քրիստոս ի քաւութիւն եւ ի թողութիւն„ եւն. միւսներն ըստ մեզ.: ‖[1223] Ամէնքն ունին "մարմին քո„ եւն, որ տպագրաց մեծ մասին (ՏՍ եւ OS) մէջ բանաձեւն է հաղորդութեան, մինչդեռ ըստ ինքեան Բաշխման "Թովմայի„ տողին առաջին տողերն են սոսնք: Ըստ այսմ ալ կը նշանակեն BDFJN² եւ GK ձեռագիրք, այսպէս BDN² "առէ ի բանից Թովմայի (D Թումայի) առաքելոյն. Մարմին քո պատուական եղիցի ինձ ի կեանս եւ սուրբ արիւն (D արիւնդ) քո ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց իմոց.„ F "առէ զբանս Թովմայի առաքելոյն. Մարմինս քո պատուական լիցի ինձ ի կեանս եւ արիւն քո ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց.„ J "Թովմայի„ խառնագիր չունի, իսկ բանաձեւն ըստ F-ի: GK "Եւ առէ զբանս Թումայի առաքելոյն. Մարմին քո„ եւն ըստ մեզ.: Միւս ձեռագիրք ալ (ACEHIMN) բանաձեւս ունին ըստ տպագրութեան: ‖[1224ff] Հաղորդութեան կամ Բաշխման մասերս ալ շատ պէսպէս են: BDF տես վերն. J եւ N² դրինք լիակատար Հատածիս սկիզբը: Միւսներն աւելի համեմատ են տպագրութեան, բայց նաեւ շատ շեղումներով: ‖[1224—1226] ACEGHKMN "Եւ թէ սարկաւագ կայ (= O) հաղորդեսցի եւ նա. (C Եւ թէ. քհ. կամ սրկ. կայ անդէն՝ հաղորդեսցի:) Եւ առնու (= O) սրկն. զսկիհն եւ դառնայ (= O) ի ժողովուրդն (= O, իսկ E "դառնայ ժողովուրդն„) ասելով բարձր ձայնիւ. (= O, իսկ GK լոկ "բարձր.„ CHN չունի "բարձր„ ալ:) Երկիւղիւ եւ հաւատով յառաջ մատիք.„ (այսչափ EGHMIN): Այս ամէնը՝ I "Եւ սրկ. թէ կայ՝ հաղորդեսցի եւ նա. եւ առնու զսուրբ սկիհն եւ դառնայ ի ժողովուրդն ասելով. Երկիւղիւ„ եւն: Տպագիրներէն PQ՝ "Եւ սրկն. հաղորդեսցի, եւ յետ հաղորդելոյն գոչէ առ ժողովուրդն եւ ասէ բարձր. Երկիւղիւ„ եւն: S "Եւ սրկն. հաղորդեսցի. եւ յետ հաղորդելոյն դարձցի առ ժողովուրդն ասելով բարձրաձայն. Երկիւղիւ...: Դպիրքն բարձր ձայնիւ. Աստուած մեր„ եւն: Դպրութիւնք (R²tv եւ be) "Եւ քարշեն զվարագոյրն յետ (v յետս): Եւ սրկն. քարոզէ բարձր ձայնիւ. (e չունի խառնագիրս.) Երկիւղիւ...: Եւ ժողովուրդն (b եւ v "ժողովուրդքն„) ասեն բարձր ձայնիւ. Աստուած մեր„ եւն: Հոս կը պակսի b՝ թուղթ ինկած ըլլալով. (Թղ. 88էն ետքը:) ‖[1226] "Դպր. բարձր„ դրինք ըստ V²: Ձեռագիրներէն ACEHIMN "Ժողովուրդն ասէ բարձր ձայնիւ.„ (AN չունին "ձայնիւ.„) GK "Ժողն. բարձր ձայնիւ:„ Տպագիրներէն՝ O "Դպիրքն ասեն բարձր ձայնիւ.„ PQ "Եւ դպիրքն բարձր ձայնիւ.„ S տես տող 1225: ՏՍ "Ժողն. ասասցէ բարձր ձայնիւ:„ ‖[1227] N² (ըստ BDF) "Տէր

*— Եւ հաղորդեցին նոր ծնունդաբերեալն, բայց ոչ ի բերանն, այլ ի յափն տալով զսրբութիւն: Եւ ամենայն արժանաւոր ժողովուրդն հաղորդեցին: Եւ յետ հաղորդելոյն խաչակնքեաց զժողովուրդն, եւ ասաց բարձր.* **Կեցո տէր † զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս քո, հովուեա եւ բարձրացո զսոսա յայսմհետէ մինչեւ յաւիտեան։**

*Դպիրքն յետ հաղորդութեան երգեցին.* **Լցաք ի բարութեանց քոց տէր, ճաշակելով զմարմին քո եւ զարիւն։ փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ։ Որ հանապազ կերակրես զմեզ, առաքեա ի մեզ զհոգեւոր քո զաւրհնութիւն։ փառք ի բարձունս կերակրողիդ զմեզ։**

---

Աստուած մեր երեւեցաւ„ եւն. E "Աստուած մեր եւ տէր մեր երեւեցաւ մեզ„ եւն։ ‖[1228—1230] Այս խրատագրին տեղ AE կ'ըսեն "Եւ հաղորդին ժողովուրդն։ Եւ յետ հաղորդելոյն խաչակնքէ † զժողովուրդն եւ ասէ (E բարձր.) Կեցո„ եւն։ C "Եւ նոր ծնունդաբերելոցն յափն տալով եւ ոչ ի բերան, եւ հաղորդեցին ամենայն արժանաւորքն. եւ յետ հաղորդելոյն խաչակնքէ զժողովուրդն եւ ասէ բարձր. Կեցո զժողովուրդ„ եւն։ Միւսներն ըստ տպ., բայց շատ պէսպիսութեամբ։ GIK "Եւ հաղորդին նոր ծնունդաբերեալքն ոչ (I այլ ոչ) ի բերանն„ եւն. M "Եւ հաղորդի նոր ծնունդաբերեալն, այլ ոչ ի բերանն„ եւն. HN "Եւ հաղորդեցի նոր ծնունդաբերեալն, (N այլ) ոչ ի բերան„ եւն. (Նաեւ O այս "այլ„ փխ. բայց,„ եւ OPQSRV "ի բերանն.„) — GHIKMN եւ OPQS "այլ յափն տալով (O տալ) զսրբութիւնն (KN զսրբութիւն.„) — HIMN եւ ՏՊ. ՝Եւ ամենայն արժանաւոր ժողովուրդքն (այսպէս 22 եւ իսկ OS. NR "ժողովուրդն„ ըստ ՏԱ. եւ PQ "Եւ ամենայն արժանաւորքն հաղորդեցին„ եւն) հաղորդին„ եւն։ Իսկ GK սոսր տեղ "Եւ ժողովուրդն հաղորդին։„ — GHIKMN "Եւ յետ հաղորդելոյն խաչակնքէ (= O) զժողովուրդն եւ ասէ (= O) բարձր.„ (I "...բարձր ձայնիւ.„ GK "...զժողովուրդն՝ ասելով։) Տպագիրներէն PQ "...խաչակնքեաց ընծայիւն եւ ասացէ.„ (չունի "բարձր„, զոր ունին OS ալ։) — Ժողովրդեան հաղորդութիւն տալու կաթողիկեայց ձեւը մանրամասն տես ի X, էջ 29, զոր հոս չենք կրկներ, քանի որ չկայ նոյնպէս ձեռագրաց եւ այլ Խորհրդատետրներու մէջ։ ‖[1230] CF "Կեցո զժողովուրդս„ եւն (չունին տէր„)։ ‖[1231—1232] DF եւ CE "...բարձրացո զնոսա„ (փխ. "զսոսա„ ըստ այլոց)։ ‖[1232] B "...մինչեւ յաւիտեան. ամէն։„ ‖[1233] Խրատագիրս չունի A, այլ կը կցէ "Լցաք„ եւն առանց խորագրի. նոյնպէս J, իսկ E պարզ "Դպիրքն. Լցաք„ եւն (= V²)։ Միւսներէն՝ C "Յետ հաղորդութեան դպ. եղանակեն.„ N "Յետ հաղորդութեան. Լցաք ի բարութեանց քոց։ (ՔՀ.) Գոհանամք զքէն հայր„ եւն։ GKI "Եւ զկնի (I յետ) հաղորդելոյն, (GK դպ.) երգեն.„ M "Եւ յետ հաղորդութեանն երգեն։„ Տպագիրքը մեր դրածին պէս, միայն O "Եւ յետ հաղորդելոյն երգեն դպիրքն.„ V "Եւ յետ հաղորդութեանն (= RT) երգեցեն ժողովուրդն։„ — "Լցաք„ տաղին միայն սկիզբը կը յիշեն տպագիր Խորհրդատետրներն եւ KN։ Լիակատար ունին միւսները (A—N², իսկ B տես Թղ. 157բ կից ունենալով "Գոհանամք„ եւն.) եւ Դպրութիւնք aegjklmnopq եւ տպագիրք R²Vstv։ Դպրութիւնք (այսպէս R²tv) նախ խորագիրս ունին "Դարձեալ քարոզն զկայրագայրն. եւ դպիրքն երգեն.„ g կ'ըսէ՝ "Երգ զկնի բաշխման սուրբ խորհրդոյն.„ իսկ j (Թղ. 180) հոս նախ ունի "Դպ. Հացս այս մարմին„ եւն տաղը։ ‖[1234] G "Փառք ի բարձունս„ բառերէն ետքը չի գրեր տաղս։ ‖[1235] Միայն m՝ "Ե- որ հանապազ„ եւն։

ԼԲ. Հատածիս կէսը, ուստի Գոհութեան երեք աղօթքի հատուածները (մինչեւ տող 1251) չունին BDFJN², տես Հած. ԼԱ սկիզբը։ Ունին միւսները՝ ACEGHIKMN ըստ տպագրաց. ‖[1238] Խրատագիր չունին AH. իսկ C "ՔՀՆ. ասէ. Գոհանամք„ եւն. E "ՔՀՆ. ասէ զայս.„ I "Եւ ՔՀՆ. զայս նմին ասէ.„

ԱՂԱՒԹՔ ԳՈՀՈՒԹԵԱՆ

Ալ. — *Քահանայն [ասասցէ ի ծածուկ.] Գոհանամք զքէն Հայր ամենակալ, որ պատրաստեցեր մեզ նաւահանգիստ սուրբ զեկեղեցի, տաճար սրբութեան, ուր փառաբանի սուրբ Երրորդութիւնդ: Ալէլուիա: — Գոհանամք զքէն Քրիստոս Թագաւոր, որ պարգեւեցեր մեզ կենդանութիւն կենարար մարմնով եւ արեամբդ քով սրբով. [շնորհեա զքաւութիւն եւ զմեծ զողորմութիւն:] Ալէլուիա: — Գոհանամք զքէն Հոգիդ ճշմարիտ, որ նորոգեցեր սուրբ զեկեղեցի. անարատ պահեա հաւատով Երրորդութեանդ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան: Ալէլուիա:*

*Սրկ. Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչեսցուք: Եւ եւս հաւատով ընկալեալք յաստուածային, սուրբ, յերկնային, յանմահ, յանարատ եւ յանապական խորհրդոյս, զտեառնէ գոհացարուք: — Դպ. Գոհանամք զքէն տէր,*

M պարզ "ՔՀ." (= SV² եւ ՏԱ. մինչդեռ O "Եւ մինչ նոքա երգեն, քհն. ասէ զաղօթս." եւ PQ "ՔՀն. I ասասցէ ի ծածուկ.") իսկ GK ընդարձակ՝ "Եւ քհն. լուանայ զձեռն, իսկ սրկն. խունկ արկանէ շուրջ զսեղանովն, եւ առեալ սանի զպատն ի սպասատունն եւ ասէ զաղօթս." (K "եւ ասէ զայս:") — "Գոհանամք" աղօթիցս դիմաց լուսանցքի վրայ նշանակեր է M՝ "Երե+ Գոհա- Նամ+ա ա-ելուր է ա-եկն, +ա կամ-ա է:" ‖1239 N² "...սուրբ եկեղեցի, տաճար" եւն: ‖1240 N "ուր փառաբանի սուրբ Երրորդութիւն. ալէլուիա." Q "ուր փառաբանի ամենասուրբ Երրորդութիւնդ" եւն, որմէ աղաւաղած P "ուր փառաբանի անուն սուրբ Երրորդութեանդ" եւն, եւ S "ուր փառաբանի սուրբ Երրորդութեանդ" եւն: ‖1242—1243 CEIM "...եւ արեամբդ (C արեամբ) քո սրբով" եւն. O ալ "եւ արեամբ քով" եւն: — Փակագծեալ "շնորհեա... զողորմութիւն" նախադասութիւնն ունին 22. եւ OPQSW, դուրս ձգած է R՝ եւ անոր հետ UVV²TX: — Վերջը PQ "ալէլուիա. ալէլուիա." (= M:) ‖1245 Հոս վերջը կը կցէ E "...մինչեւ յաւիտեան. ալէլուիա: Ի Յոյն. Աստուած մեր եւ Տէր մեր եւ Փրկիչդ մեր Յիսուս Քրիստոս որ ես ուրհնեալ ընդ Հաւր եւ ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ: Խղ. ամենեցուն: Աստուծոյ երկրպ.: Ան+նին անհաս" եւն (տող 1262). ուստի չունի անկէ նախընթացները: ‖1246 Հոս կը սկսին BDF համաձայնիլ միւսներուն: N² (= X) չունի "Եւ եւս" եւն մինչեւ յաջորդ աղօթքը՝ տող 1251. (տես Հած. ԼԸ սկիզբը): J ալ զատոնք այլուր ունի, սա կարգաւ ունենալով՝ "Լցօ+...: Գոհանամ+ զ+էն Տէր որ զայօղէօ+, եւն. (տող 1251:) Խղ. Ան+նին անհաս, եւն. (տող 1261:) Սրկ. Եւ եւս խղ.: Եւ եւս հաւատով, եւն: Դպ. Գոհանամ+, եւն: ՔՀ. իջանէ ի տաճարն. Որ աւրհնեա զայնաէ{," եւն: Նոյնպէս է N² "Լցօ+...: Գոհանամ+ զ+էն Քրիստոս Աստուած որ զայօղէօ+...: Խղ. Աստուծոյ երկրպ.: Ան+ննին անհաս...: Եւ առեալ զպատն սանի սպասատունն եւ սրկն. քարոզէ. Եւ եւս խղ.: Եւ եւս հաւատով...: Եւ քհն. երիցս անգամ երկրպագէ զսեղանն, եւ իջանէ ի մէջ եկեղեցւոյն եւ ասէ զաղաւթս բարձրաձայն. եւ սրկն. բերէ զաւետարանն տայ ի գիրկն քահանային. եւ քհն. ասէ բարձր ձայնիւ. Որ աւրհնես զայնաէ{" եւն: — Ըստ այսմ "Եւ եւս հաւատով" ունին A—N եւ Պարզութիւնք I²aejmr եւ տպագիրք R²V²stv. — Խորագիր "Սրկ." ունին մեծագոյն մասն. բայց CGHN "Սրկն. քարոզէ:" ‖1247 A "...ընկալեալ յաստուածային" եւն (= FHJae): — 'Յաստուածային" չունի N²: — Շատերը յաջորդ ածականները առանց նախդրի կը գրեն, այսպէս DJ "...աստուածային (= F), սուրբ, երկնային (= av), անմահ (= av, իսկ D ալ "յանմահ"), անարատ (= av, բայց D "յանարատ") եւ անապական (= avs, իսկ N² չունի "անապական"

որ կերակրեցեր ըզմեզ յանմահական սեղանոյ քո: Բաշխելով զմարմին եւ զարիւնդ ի փրկութիւն աշխարհի, եւ կեանք անձանց մերոց:

Եւ քհն. ասասցէ ի ծածուկ. Գոհանամք զքէն Քրիստոս Աստուած. որ զայսպիսի ճաշակումն բարութեան շնորհեցեր մեզ ի սրբութիւն կենդանութեան: Սովիմբ պահեա զմեզ սուրբս եւ անարատս, բնակեալ զմեաւք քո աստուածային խնամաւքդ: Հովուեա զմեզ յանդաստանի կամաց քոց սրբոց եւ բարե-

բառը) խորհրդոյս՝ զոեառնէ (jm “ի տեառնէ”) գոհացարուք:” Միւսներն բառ առ., ի մասնաւորի ACGH եւն: ‖1248–1250 Խորագիրը “Դպ.” բառ PQV$^2$ եւ JN եւ Դպրութեանց. միւսները (եւ O եւ ՏU) “Ժող. Գոհանամք”. G “Դպիրքն եղանակեն.” D “Ժող. ասեն.” իսկ k “է Պօրանէ Հօյոց. Գոհանամք” եւն: Տողին սկիզբը միայն կը յիշեն շատերն, այսպէս KMN եւն: Ունին միւսներուն հետ Դպրութիւնք aegjkmnoq եւ տպագիրք R$^2$V$^2$stv. իսկ l չունի, որ ընդհանրապէս “Լցաք” տողով կը սպառի: — G “Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ կերակրեցեր” եւն. em “յանմահական սեղանոյդ քում:” Հոս կը սպառին BCDGKae, ուստի չունին կէս մասը “Բաշխելով” եւն: Մնացեալներէն G եւ gsv առանց խորագրի կը կցեն յաջորդն ալ, մինչ ոմանք (R$^2$t եւն) “Դպ. Բաշխելով” եւն. — n (որ նախ ունի այս տունը) “բաշխէ” (փխ. “բաշխելով.”) — v “զմարմինդ” եւն. — I$^2$G “եւ զմարմին” եւն. — “Եւ կեանք անձանց մերոց” բառերը չունին G եւ gn, եւ G կը կրկնէ “Գոհանամք” եւն. k հոս վերջը կցէ “Փառք Աստուծոյ որ բառնաս զմեղս զաշխարհի, ողորմեա մեզ: Փառք Աստուծոյ որ բառ. նոյն է: Փառք Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի, տուր մեզ զքո զխաղաղութիւնդ.,” որով կը սպառի. m հոս կը կցէ տաղն “Որ է Ընդէշ” եւն (Թղ. 62ա) եւ l կ՚աւարտի հոս յիշատակարանիկով մը (Թղ. 29ա) “Զայս սաս եղբայր իմ սիրելի եւ ապա զԳոհանամքն եւ յետ Գոհանամքին զԲաշխելովն. վասն զի օրինակն չկայր, եւ զմեղաւոր Խաչատուր գրիչս եւ զծնողս Աստուրն յիշեա ի Քրիստոս Աստուած.” (վասն զի l կը գրեր էր նախ “Բաշխելով”, յետոյ “Եւ եւս հաւատով” եւն:) — Տպագիր դպրութիւնք (R$^2$stv) հոս կը յաւելուն՝ “Իսկ ասամոր դպիրքն եղանակեն տաղս խորհրդաւորս, մինչեւ քհ. կատարէ զկարգ (t զկարգն) աղօթիցն: Եւ յորժամ հաղորդին արժանաւորքն, դպիրքն երգեն զերգս. (sv զտաղս զայս:) Տաղ Բաշխման. Մայր հաւատոյ” եւն. (տաղս ունին նաեւ Ja, իսկ j “Հայս այս մարմին” անէն սկսելով. յետոյ R$^2$t “Ո՞վ զարմանալի” տաղն Յայտնութեան, որուն տեղ v “Տաղ Պատարագի Հաղորդութեան: Գոհաբանեսցուք Աստուածն մեր երգաբանելով” եւն (էջ 104.) ապա երկը R$^2$t տաղս “Գովեր հրեշտակն առ վիմին” եւն, որուն վերջին տողով “Տեսին զՅիսուս յարուցեալ” կը սկսի դարձեալ b (Թղ. 89ա): ‖1251 E չունի աղօթս “Գոհանամք” եւն: — Խորագիրը՝ 22. “Եւ քհն. ասէ (AN աղօթէ) ի ծածուկ.” (GK կցէ “...զաղօթս.” N “աղօթէ ի ծածուկ եւ ասէ:”) Տպագիրներէն PQ “Քհն. ասացէ ի ծածուկ. O “Եւ քհ. ասէ” եւն. S չունի “ի ծածուկ” բառը:) — BDJ “Գոհանամք (J Գոհանամ) զքէն Տէր, որ զայսպիսի” եւն. CGHMN$^2$ “Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ” եւն: ‖1252 M “...ճաշակումն սրբութեան շնորհեցեր” եւն: — BF “...շնորհեցեր մեզ ի փրկութեան կենդանութեան.” J “...շնորհեցեր մեզ ի կենդանութիւն” (լուս. “փրկութեան”): ‖1253–1254 N “Սովիմբ պահեա մեզ Քրիստոս սուրբս” եւն. — BDFJN$^2$ “...պահեա զմեզ սուրբս եւ անարատս (D անարատ) բնակել զմեաւք քո (BJ քոյով, DF քոյին, N$^2$ չունի “քո”) աստուածային խնամովք.” (N$^2$ բնակիլ զմիաւք աստուածային խնամաւքն:) Միւսներն բառ առ., միայն ACGHIJKMN “խնամաւքդ.” (= OPQS եւ RUVV$^2$ “խնամօքդ.” TW “խնամովքդ:”) ‖1254 D չունի “Հովուեա զմեզ”, այլ “Պահեա զմեզ յանդաստանի” եւն: — Բոլոր 22 (A—N$^2$) “...կամաց քոց սրբոց եւ բարեխօսութեամբ” (N$^2$ “...սրբոց եւ բարերարացդ.” B “...կամաց քոց եւ

*սիրաց։ Արդ՝ ամրացեալք յամենայն բանսարկութեն ընդդիմութեանց՝ քումդ ուեթ եղիցուք արժանի լսել ձայնի, և քեզ միայնոյ քաջայաղթ և ճշմարիտ հովուիդ հետևել, և առ ի քէն ընդունել զպատրաստեալ տեղի յարքայութեանդ երկնից, Աստուած մեր և տէր և փրկիչ Յիսուս Քրիստոս. որ ես աւրհնեալ ընդ Հաւր և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։*

*Խաղաղութիւն † ընդ ամենեսեան։ Անքնին, անհաս, երրեակ ինքնութեանդ, հաստիչ, ընդունաւղ և անբաժանելի միասնական սուրբ Երրորդութեանդ վայել է փառք, իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։ — Սրկ. Աւրհնեա տէր։*

ԱՂԱԻԹՔ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ԼԳ. — [*Եւ ապա առցէ զաւետարանն սուրբ ի ձեռն իւր,*] *եւ երկրպագեալ համբուրեսցէ զսեղանն, եւ իջեալ ի մէջ եկեղեցւոյն, ասասցէ զա-*

---

բարեսիրաց.") Նաև OPQS "...և բարեսիրաց", իսկ ՏՍ (RTUVV²W) "...և բարերարաց։" Դրինք ըստ ձեռագրաց։ ||[1255] ACDGHIJKMN "...քում ուեթ արժանի" ևն (= OPQS.) իսկ BF "...քումդ ուեթ" (= ՏՍ)։ ||[1256] F "...քեզ միայնոյ և քաջայաղթ և ճշմարիտ" ևն. N² "...միայնոյ քաջայաղթ ճշմարիտ" ևն։ ||[1257] ABDGMN² "...հովուիդ հետևել." FIJ "...հետևեսցուք." իսկ HN "...հետևել." ըստ ՏՊ։ — PQS "...առ ի քէն ընդունել" ևն։ "Տեղի" չունի F, ուստի "...ընդունել զպատրաստեալ յարքայութեանդ" ևն. H "...զպատրաստեալ տեղի արքայութեանդ" ևն. իսկ FJN² "զպատրաստեալ տեղի յարքայութենէն քում" (N² "երկնից" փխ. "քում."): ||[1258] BDGKN "...ի Յոյս. Աստուած մեր" ևն. (F չունի "ի ձայն" միւսներուն հետ։) — FIJKMNN² "...Աստուած մեր և Տէր մեր և փրկիչ (HJN և փրկիչդ) Յիսուս" ևն։ ||[1259] FGIJKMN "...ընդ Հաւր և ընդ սուրբ Հոգւոյդ" ևն։ ||[1261] EFGH "Խղ. ամենեցուն" (= OPQSU։) E այլ ունի "Անքնին" ևն աղօթքս։ BEN² կցեն "Աստուծոյ երկրպ.։" ||[1262] CGKN² "Անքննին" ևն։ — BDFJN² "Անքնին, անհաս էակ, ինքնութեանդ (N² ինքնութեան) հաստիչ և ընդունաւղ, անբաժանելի և անեղ տէրութեանդ, ի ձայն, միասնական (N² լոկ "...անբաժանելի և միասնական") սուրբ Երրորդութեանդ վայելէ (D վայելեն) փառք իշխանութիւն և պատիւ." (Հոս կը դադրեցընեն աղօթքս BDN²։) Նաև GK սկիզբն առնեն այսպէս՝ "Անքննելին անհաս, էակ ինքնութեանդ, հաստիչ" (Յաւելուածն ըստ այլ., որուն համեմատ են ACEHIMN)։ Վերջնոյ մէջ՝ N "...ինքնութենէդ հաստիչ" ևն. — A "ընդունողաղ" (փխ. "ընդունաւղ.") — EG "...վայելեն փառք" ևն (= O)։ ||[1264] Դպրութիւնք (R¹tv և b) "Եւ ի վերջ աղօթին (b չունի "ի վերջ աղօթին") ասէ Սրկն. Աւրհնեա Տէր։ ՔՀն. Որ աւրհնեա զայնոսիկ" ևն։

ԼԳ. ||[1266] Խորագիրս JN² անս վերը տող 1246, դարձեալ BDF "Եւ իջանէ ի մէջ եկեղեցւոյ և ասէ զաղաւթս բարձր." (D չունի բարձր։") ACEGIKMN (= O) "Եւ երկրպագեալ համբուրէ զսեղանն։ Եւ իջեալ (GK իջանէ) ի մէջ եկեղեցւոյն (M եկեղեցւոյ) ասէ զաղօթս." (այսպէս A. իսկ CN "ասէ զաղաւթս բարձր." MI "ասէ զաղաւթս ի ձայն." G "ասէ զաղաւթս ձայնիւ բարձր." K "ասէ բարձր։") իսկ H "Երկրպագանէ համբուրէ զսեղանն և իջեալ ի մէջ եկեղեցւոյն ասէ զաղաւթս բարձր." J լոկ՝ "ՔՀ. իջանէ ի տաճարն։" Տպագիրներէն՝ PQ "Եւ ապա առցէ զաւետարանն սուրբ ի յձեռն (Q ի յձեռս) իւր (= V), և երիցս երկրպագեալ համբուրէ զսուրբ սեղանն, և իջեալ

*ղաւթս ի ձայն. Որ աւրհնես զայնոսիկ՝ որ աւրհնեն զքեզ տէր, եւ սուրբ առնես զյուսացեալս ի քեզ: Կեցո զժողովուրդս քո, եւ աւրհնեա զժառանգութիւնս քո. զլրումն եկեղեցւոյ քո պահեա, սրբեա զնոսա՝ որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո: Դու զմեզ փառաւորեա աստուածային զաւրութեամբ քով, եւ մի՛ թողուր զյուսացեալքս ի քեզ: Զխաղաղութիւն քո պարգեւեա ամենայն աշխարհի, եկեղեցեաց, քահանայից, թագաւորաց քրիստոնէից, եւ զինուորեալ մանկանց նոցա եւ ամենայն ժողովրդեանս. զի ամենայն տուրք բարիք, եւ ամենայն պարգեւք կատարեալք ի վերուստ են իջեալ առ ի քէն՝ որ ես Հայր լուսոյ, եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ:*

*Եւ դպիրքն ասասցեն երեք անգամ. Եղիցի անուն տեառն աւրհնեալ, յայսմ հետէ մինչեւ յաւիտեան:*

*Եւ քահանայն դարձեալ առ ժողովուրդն ասասցէ ի ձայն. Կատարումն աւրինաց եւ մարգարէից դու ես Քրիստոս Աստուած փրկիչ մեր, որ լցեր*

---

(P իջանելով) ի մէջ եկեղեցւոյն ասասցէ զաղօթս:„ Միւս տպագիրք մեր դրածին պէս, բայց O ըստ A են, ուստի մեր դրած փակագծեալ “Եւ ապա ասէ„ են խօսքն ունին PQV: ‖1269 H “...եւ սուրբ առնեն„ (փխ. “առնես:„) BDFJN² “...զյուսացեալսն ի քեզ.„ HI “զյուսացեալսս ի քեզ„: — JN² “Կեցո Տէր զժողովուրդս„ են: ‖1270 N² “Զլրումն եկեղեցւոյ քոյ պահեա„: — BDFJN² “...պահեա. Եւ սուրբ արա զնոսա„ են. (K “...եւ սրբեա զնոսա„ են:) ‖1271 N “...աստուածային զաւրութեամբդ քո„. DEJ “...զաւրութեամբ քո:„ ‖1272 ADN “Եւ մի թողուր զյուսացեալս ի քեզ.„ (= PQS.) — AEHGIKMN եւ PQS “Զխաղաղութիւն պարգեւեա„. միւսները BCDFJN² եւ O ու ՏԱ “Զխաղաղութիւն քո պարգեւեա„ են: ‖1273 HI “...քահանայից, առաջնորդաց, թագաւորաց„ են: — ACEGHIKMN “...թագաւորաց մերոց„. (միւսները “թագաւորաց քրիստոնէից.„ I նախ “քրիստոնէից„ գրած, յետոյ ջնջած գրած է “մերոց„.) J “թագաւորաց քրիստոնէից, եւ իշխանացն բարեպաշտից, եւ զինուորեալ մանկանց նոցին, եւ ամենայն„ են: ‖1275 PQ “...ի վերուստ են իջեալք առ ի քէն„ են: ‖1276 O “վայելէն փառք„ են: ‖1277—1278 Խորագիրը PQS՝ “Եւ Դպիրքն ասասցեն երիցս.„ (O “Դպիրքն ասեն երեք անգամ.„) միւս ՏԱ “Եւ ժողովուրդն ասասցեն երեք անգամ:„ Իսկ 22. շատ պէսպէս են: ACMN “Եւ ժողովուրդն ասէ գ անգամ.„ (C “...գ անգամ ասէ.„) EHI “Եւ ժողն. ասեն գ անգամ.„ (I “...գ անգամ ասեն.„) GK “Եւ ժողն. ասեն գ. հետ:„ BDFN “Եւ ժող. միաբան ասեն գ. անգամ.„ N² “Եւ ժողովուրդն միաբարբառ (այսպէս) գ. անգամ ասէ զայս:„ J պարզ “Դպ. Եղիցի„ են: — Վերջին ալ կը կրկնէ H “գ. անգամ կրկնեա„ (V “Երիցս կրկնեա.„ e “Երեք անգամ ասեն:„) Սաղմոսն “Եղիցի„ ամէնքն ունին, ոմանք միայն սկիզբն յիշելով: ‖1279 Խորագիրն այլեւայլ կերպով ունին 22. այսպէս ACEHIMN “Եւ քհն. դառնայ ի վերայ ժողովրդեանն ասելով (NC եւ ասէ.) Կատարումն„ են. GK “Քհն. ասէ ի վերայ նոցա. Կատարումն„ են. J “Քհն. դառնայ առ ժողովուրդն ասելով խաչակնքէ:„ Նաեւ տպագիրք OPQRSTUVV² “Եւ քհն. դարձցի (O դառնայ) ի վերայ ժողովրդեան եւ ասասցէ ի ձայն.„ (O “եւ ասէ.„ S չունի “եւ ասասցէ ի ձայն.„ RUT “...ժողովրդեան՝ ասելով. Կատարումն են:) Մենք դրինք ըստ W. ‖1280 H “Կատարումն աւրինացն„ են: Բոլոր 22 (A—N²) “որ լցուցեր զամենայն„ են: Իսկ ՏՊ “որ լցեր„ են: ‖1281 ACDEGHJKMN “...զամենայն հայրական տնաւրէնութիւնս„ են. BF “զամենայն հայրական„ են (= ՏՊ. եւ J ալ լուսանցքի վրայ.) — J “...տնօրէնութիւնդ քո. (EGHIN չունին հոս “քո„:) — IMN “Լցո զմեզ„ են. JN²

զամենայն հայրական տնաւրէնութիւնս քո. լցո եւ զմեզ Հոգւովդ քով սրբով ։

[Սրկ. Աւրհնի ։ — Քհ. Խաղաղութիւն † ամենեցուն ։ — Դպ. Եւ ընդ հոգւոյդ քում ։ — Սրկ. Երկիւղածութեամբ լուարուք ։ — Քհ. Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ — Դպ. Փառք քեզ տէր Աստուած 1285
մեր ։ — Սրկ. Պռաւսխումէ ։ — Դպ. Ասէ Աստուած, — Քհ. Ի սկզբանէ ։ էր Բանն, եւն ։ Ինչ է Յիսուսն. Եւ իբրեւ ճաշեցին եւն ։ Դպ. Փառք քեզ

---

“Լից եւ զմեզ„ եւն (= PQ) ։ — BDFJGK “...Հոգւովդ քո (BJ քով = DF) սրբով, Եւ քեզ վայելէ փառք ։ Ժող. Ամէն„ եւն ։ Տես տող 1296 ։ ‖[1283ff] Ամբողջ ձեռագիր հատուածս, ուստի վերջին աւետարանն, չունին բոլոր 22., որոնք նախընթացին կը կցեն “Աւրհնեսցին„ եւն (տես տող 1296) ։ — Բայց նաեւ Տպագիրք, որ Հռոմայ տպագրութեան հետեւած են յայսմ, տարբեր կարգաւ ունին յաճախ սակէ մինչեւ վերջը եւ վերջին աւետարանն իբրեւ յաւելուած կը գտնեն ամենէն ետքը ։ OS այսպէս ունին մինչեւ վերջը՝ “Կատարումն... ։ Եւ ասասցեն Դպիրքն. Օրհնեցից զտէր յամենայն ժամ ։ Եւ քհն. խաչակնքէ զժողովուրդն եւ ասասցէ բարձր. Օրհնեալ եղիցի... ։ Եւ ասասցեն Սղմ. ԼԳ. Ի տէր պարծեսցի անձն իմ ։ Եւ ընդ սաղմոսելն բաշխեսցի նշխար ։ Յաւարտմանն Դպիրքն. Օրհնի ։ Աւետարան ըստ Յովհաննու, Գլ. Ա համար Ա. Ի սկզբանէ էր Բանն... (O էջ 41—42, S էջ 35 ։) Եւ դարձցի յարեւելս՝ երկրպագեսցէ առաջի սեղանոյն. (O չունի առանս ։) Եւ ասասցէ. Տէր Յիսուս Քրիստոս Աստուած ողորմեա ինձ ։ Եւ մտեալ ի սարկաւագարանն, մերկասցի ի զգեստուցն եւ երթիցէ խաղաղութեամբ.„ — PQ եւ V՝ “Կատարումն... ։ Սրկ. Օրհնի ։ Քհ. Խղ. ամն. ։ Դպ. Եւ ընդ հ. ք. ։ Սրկ. Երկիւղածութեամբ լուարուք ։ Սրբոյ աւետարանիս որ ըստ Յոհաննու ։ (P Գլուխ Առաջին, համար մէկ. Q՝ Գլ. Ա, 1.) ի Հօրէ լուսոյ ։ Ի սկզբանէ էր Բանն ։ (P, նոյն ամբողջ՝ էջ 35, Q՝ էջ 36) ։ (V՝ Ժող. Փառք քեզ Տէր Աստուած մեր ։) Սրկ. Սուրբ խաչիս աղաչեսցուք զՏէր ։ Քհ. Պահպանեա զմեզ Քրիստոս ։ (V Պահպանեա զժողովուրդս քո . Քրիստոս ։) Սրկ. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ ։ Եւ քհն. խաչակնքեսցէ զժողովուրդն եւ ասասցէ բարձր. Օրհնեալ եղիցի.... ։ Եւ դպիրքն ասասցեն. (V զսղմ. ԼԳ.) Ի տէր պարծեսցի անձն իմ ։ Եւ ընդ սաղմոսելն (PQ դպրաց)՝ բաշխեսցի նշխար (V ժողովրդեանն) ։ Եւ յաւարտմանն քհն. դարձցի (V դարձցի քհն.) յարեւելս. Եւ երկրպագեսցէ առաջի սրբոյ սեղանոյն (PQ երիցս) եւ ասասցէ. Տէր Յիսուս Աստուած (V Տէր Աստուած Յիսուս Քրիստոս) ողորմեա ինձ ։ Եւ մտեալ յաւանդատունն՝ մերկասցի ի զգեստուցն, (V եկեալ առաջի սեղանոյն, երկրպագեսցէ երիցս) եւ երթիցէ խաղաղութեամբ ։„ Հոս V (էջ 33) լիակատար կը դնէ իբր յաւելուած “Սրբոյ աւետարանիս որ ըստ Յովհ... Եւ իբրեւ ճաշեցին„ եւն եւն ։ Ուստի PQV աւելի նման են մեր գրածին. — RU “Կատարումն... Ժղ. Ամն ։ Եւ ասասցեն զՍաղմոսն. Օրհնեցից զՏէր ։ Եւ ընդ սաղմոսելն բաշխեսցի նշխար ժողովրդեանն ։ Յաւարտմանն. Փառք Հօր եւ Որդ. ։ Եւ քհն. խաչակնքեսցէ զժողովուրդն եւ ասասցէ բարձր. Օրհնեալ եղիցի.... ։ Եւ դարձցի յարեւելս, երկրպագեսցէ առաջի սեղանոյն եւ ասասցէ. Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա ինձ ։ Եւ մտեալ ի սարկաւագարանն՝ մերկասցի ի զգեստուցն. եկեալ առաջի սեղանոյն երկրպագեսցէ երիցս եւ երթիցէ խաղաղութեամբ ։ Սկիզբն (U չունի “Սկիզբն„) սրբոյ աւետարանիս ըստ Յոհաննու ։ Եւ կարդասցէ զսկիզբն սրբոյ աւետարանին ըստ Յոհաննու, մինչեւ ցայն տեղին որ ասէ. Լի շնորհօք եւ ճշմարտութեամբ ։„ U ճիշդ R-ի ընթերցուածներն ունի, բայց կարգը տարբեր՝ այնու որ “Օրհնեալ եղերուք„էն ետքը կը դնէ “Սրբոյ աւետարանիս... ։ Եւ կարդասցէ... ։ Եւ դարձցի յարեւելս... ։ Եւ մտեալ ի սարկաւագարանն„ եւն ։ Նոյն իսկ Հռոմայ տպագրին Դպրութիւնն ($R^2$) այլազգ ունի՝ “Կատարումն... ։ Դպիրքն. Օրհնեցից... ։ Քհ. Օրհնեալ եղիցի... ։ Եւ ի բաշխելն զնշխարն առ ժողովուրդն՝

*տէր Աստուած մեր. — Սրկ: Սուրբ խաչիւս աղաչեսցուք զտէր, զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց. եւ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ: Ամենակալ տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա: — Քհ. Տէր ողորմեա. Տէր ողորմեա: Պահպանեա զմեզ Քրիստոս Աստուած մեր ընդ հովանեաւ սուրբ եւ պատուական խաչի քո ի խաղաղութեան. փրկեա յերեւելի եւ յաներեւոյթ թշնամւոյն: Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հաւր եւ ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:]*

*Եւ Դպն. ասասցեն զսաղմոսն. Աւրհնեցից զտէր յամենայն ժամ, յամենայն ժամ աւրհնութիւն նորա ի բերան իմ.*

---

*երգեն զսաղմոսն* 33. Օրհնեցից զՏէր յամենայն. *մինչեւ ի վերջն*: Եւ ի վերջն *ասեն*. Փառք Հօր...: Այժմ...: Եւ *ասեն*. Ալէլուիա Օրհնեցէք: ՔՀն. Սրբոյ աստուածածնին որ ընդ Յովհաննու: Յետ յարութեան տէրունեան մերոյ: ՔՀն. Եւ յիշեա ճաշեցէք: Դպ. Փառք քեզ Տէր Աստուած մեր: Սրկ. Սուրբ խաչիւս...: ՔՀ. Պահպանեա...: Եւ *արձակին խաղաղութեամբ*:„ — *Վերջապէս* TW՝ “Աստուածութեամբ...: Սրկ. Ալէլուիա Օրհնեցէք: ՔՀ. Խղ. ամէն.: Ժղ. Եւ ընդ հոգւոյդ քո այլն: (W Սրկ. Երկիրպագեսցուք: ) ՔՀ. Սրբոյ աստուածածնի որ ընդ Յովհաննու: (W Ժող. Փառք քեզ: Սրկ. Պաշտօնեայ: Ժղ. Աւէ Աստուած: ՔՀն.) Ի Հօրէն լուսոյ: Ի սկզբանէ էր Բանն. Եւ Բանն: Ժղ. Փառք քեզ Տէր Աստուած մեր: Սրկ. Սուրբ խաչիւս...: ՔՀ. Պահպանեա զժողովուրդ քո...: Եւ *դպիրքն ասասցեն զսաղմոսն*. Օրհնեցից...: Եւ *ընդ սաղմոսելն բաշխեսցի նշխար ժողովրդեանն*: Յաւարտմանն. Փառք Հօր Եւ Որդւոյ Եւ Հոգ.: Եւ *քհն. խաչակնքեսցէ զժողովուրդն եւ ասասցէ բարձր*. Օրհնեալ Եղիցի...: Եւ *դարձցի յարեւելս, երկրպագեսցէ առաջի սեղանոյն եւ ասասցէ*. Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա ինձ: Եւ *մտեալ ի սարկաւագատունն մերկասցի ի զգեստուցն*: Եկեալ *առաջի սեղանոյն՝ երկրպագեսցէ երիցս եւ երթիցէ խաղաղութեամբ*:„ — *Հաւաք ուրեմն Դպրութիւնքն ալ* (stv.) *աւելի համառօտ են*. v “Ի տէր պարծեսցի„ *սաղմոսը լիակատար կը դնէ (էջ 165 եւն.) յետոյ (էջ 167—169)* “Տաղ ի վճարման պատարագին. Անձն իմ յամենայն ժամ է տէր դարձեալ„ *եւն*. (j *Դպրութիւնն վերջնոյս տեղ կը դնէ* “Այսօր յարեաւ ի մեռելոց„ *եւն եւ ուրիշ շարականներ, իսկ* be *կ’աւարտին* “Աստուածութեամբ օրհնեալ„ *եւն կտորով, ուստի չունին վերջինքս, ինչպէս առ համարակ ամէն* 22:) — *Մենք վերը (մանրագիրն՝ տող 1283—1295) դրինք ըստ* V², *որ սակէ եւսքն այսպէս ունի մինչեւ վերջը՝* “Դպիրքն. Օրհնեցից...: Եւ *քհն. խաչակնքեսցէ զժողովուրդն եւ ասասցէ բարձր*. Օրհնեալ Եղիցի...:„ *Հոս եւ ասով կը լմննայ* V²: *Յաջորդիւս միայն քանի մը մանրամասնութիւն պիտի նշանակենք. միւսները դրինք հոս լիակատար*: ‖[1288] *Միայն* v “Սուրբ աստուածածնաւ աղաչեսցուք„ *եւն*. (*փխ*. “Սուրբ խաչիւս„ *ըստ այլոց*:) ‖[1291] R²PQ “Պահպանեա զմեզ Քրիստոս„ *եւն*. V “Պահպանեա զժողովուրդ քո„ *եւն*, TWtv “Պահպանեա զժողովուրդ քո Քրիստոս„ *եւն*. — *միայն* t “ընդ հովանեաւ սուրբ... խաչի քո„ *եւն*: ‖[1295] *Հոս վերջը* R² “Եւ արձակին խաղաղութեամբ„՝ *վերը դրած ըլլալով* “Օրհնեցից„ *եւն, իսկ* be *եւ* tv *հոս* “Դպ. Օրհնեցից... ՔՀ. Օրհնեալ Եղիցի... ընդ ձեզ (v Եւ ընդ) ամենեսեանդ. ամէն. (cb *չունին* “ամէն:„) Եւ *արձակին խաղաղութեամբ*.„ (bev *չունին խորատադիրս*:) ‖[1296ff] *Տպագիրքը լիակատար մինչեւ վերջը, ուստի այս մասերն ալ, տես նախընթացը: Ձեռագիրք ալ մինչեւ վերջը նուազ պէսպէս չեն*. BDF *տես վերն*, N² *այսպէս է՝* “Աստուածութեամբ...: Եւ *սկսանին* Սղմ. Աւրհնեցից զՏէր յամենայն ժամ յամենայն ժամ: *Զփոխն ի բուն սաէ, եւ զառաջի տունն կրկին ասայ*: Եւ *կիսատարկաւագն բերէ զնշխարն առաջի քահանային, եւ նայ բաշխէ ժողովրդեանն եւ կիսասարկաւագն բաշխէ զմնացեալ կոտորն մանկանցն ողջայոյ*: Եւ *ասէ քարոզ*. Սուրբ խաչիւս Եւ սուրբ աստուածածնաւ:

*Եւ քահանայն խաչակնքեսցէ զժողովուրդն. եւ ասասցէ բարձր.* **Աւրհ-նեալք † եղերուք ի շնորհաց սուրբ Հոգւոյն. երթայք խաղաղութեամբ. եւ Տէր եղիցի ընդ ձեզ ընդ ամենեսեան: Ամէն:**

*Եւ դպիրքն ասասցեն զՍղմ. ԼԳ.* **Ի Տէր պարծեսցի անձն իմ:** *Եւ ընդ սաղմոսելն՝ բաշխեսցի նշխար ժողովրդեանն: Եւ յաւարտմանն՝ դարձցի քհն. յարեւելս, երկրպագեսցէ առաջի սրբոյ սեղանոյն եւ ասասցէ.* **Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա ինձ:** — *Եւ մտեալ ի սարկաւագարանն՝ մերկասցի ի զգեստուցն, եկեալ առաջի սեղանոյն, երկրպագեսցէ երիցս. եւ երթիցէ խաղաղութեամբ:*

---

Աղօթք. Պահպանիչ: Եւ ապա լուանայ զձեռն յաւազանն, եւ դառնայ ի բեմն, եւ հանէ զհանդերձն եւ առէ զԱմբիծն: Եւ աւարտն կարգան զՅոհան ֆոխն. Եւ յերեսն ծածկեսցէ: Արկն. քարոզէ. Վասն հանգուցելոց հոգւոց: Եւ քհն. ասէ զաղօթս. Քրիստոս Որդի անմահին եւ բարերարն: Եւ նմա փառք յաւիտեանս ամէն." N*ի վերջին մասը միայն իրեն յատուկ է, եւ՝ բանիք՝ նոր ձեռք է: — J ամենեւին խորագիր չունի, եւ կարճ "Կատարեալ աւրհնօց...: Աւրհնեալ եղերուք..." (ուրիշ ոչինչ:) — Միւսները ACEGHIKMN "Կատարեալ... Հոգեւորք եւ մարմնոյ: Ժող. Ամէն: Եւ տան զՍաղմոս (IN սաղմոս, GK սաղմոս ձայնիւ. C զսաղմոսն.) Աւրհնեցից զՏէր...: (GK Զփոխն ի բուն տառ:) Եւ ընդ սաղմոսելն (C եւ ընդ ասել սաղմոսին, I եւ ընդ սկսանելն, K եւ ընդ յասելն) բաշխի նշխար (A նշխարն, GK բաշխէ քհն. զնշխարն) ժողովրդեանն: Յաւարտմանն (E յաւարտման, H յաւարտ.) Փառք Հաւր. (EH լիակատար կը գրեն, իսկ GK տար տեղ՝ "Եւ յաւարտման տան փառք:") Եւ քհն. խաչակնքէ զժողովուրդն եւ ասէ բարձր (GKN չունին "բարձր.") Աւրհնեալ եղերուք ի շնորհաց սուրբ Հոգւոյն, երթայք խաղաղութեամբ եւ տէր եղիցի ընդ ամենեսեան (H "ամենեսեանդ", որով կը սկսի H.) Ժող. Ամէն. (= IGKM, իսկ N "Դպ. Ամէն." E չունի "Ամէն." AC "Ժող." չունին, այլ "ամէն" կը կցեն աղօթքին:) Եւ դառնայ յարեւելս, երկրպագէ առաջի սեղանոյն (C ...յարեւելս քհն. եւ երկրպագէ առաջի սեղանոյն երիցս, E "...երկրպագէ երից առաջի..., GKIMN ...երկրպագէ առաջի սեղանոյն երիցս) եւ ասէ. Տէր Յիսուս Քրիստոս Աստուած (CGK չունին "Աստուած") ողորմեա մեզ, (C կցէ "եւ ամենայն հաւատացելոց: Եւ ի սարկաւագարանն" եւն:) Եւ մտեալ ի սարկաւագատունն (CEIGKMN սարկաւագարանն) եւ մերկանայ (EMN "...սարկաւագարանն՝ մերկանայ) ի զգեստուցն (N մերկանայ զգեստն,) զոյ (IGK եւ զոյ) առաջի սեղանոյն, (K եւ) երկրպագէ երիցս եւ երթայ խաղաղութեամբ. (N "ի խաղաղութիւն:") — Հոս ի վերջոյ կը կցէ՝ A "Այլ աղօթք որ ասի նախ քան զճաշակել խորհրդոյն է բանից Թովմայի առաքելոյն. Մարմին քո" եւն: Նոյնը հոս ի վերջոյ նաեւ C (Թղ. 97ա), E (Թղ. 134ա), G (Թղ. 150ա), K (Թղ. 154բ), M (Թղ. 27բ) եւ N (Թղ. 62բ): — Ի վերջոյ յիշենք որ D թերի ունի՝ "Աւրհնեալ † եղերուք ի շնորհաց սուրբ Հոգւոյն եւ Տէր եղիցի ընդ ամենեսեան." մինչ F լիակատար՝ "Աւրհնեալ եղերուք ի շնորհաց սուրբ Հոգւոյն, երթայք խաղաղութեամբ եւ տէր եղիցի ընդ ամենեսեան, ամէն՝" միւս ձեռագրաց պէս:

Ը.

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՑԱՃԱՐՔ, ՀԱՆԴԵՐՁՔ ԵՒ ԿԱՀՔ ՍՐԲՈՒԹԵԱՆ

### ԱՌ ՀԻՆՍՆ ՀԱՅՈՑ ՓՈՔՐ Ի ՇԱՏԷ*

---

*Թէպէտ ստոյգ է՝ սա պատարագաց բնագիրները՝ որոնք այլեւայլ նպաստիւք ցայժմ երեւան ելան, իրենք իրենցմէ հեղինակէն եւ ժամանակէն այնչափ փառաւոր եւ լուսաւոր են՝ որ ասոնցմով չէին գտներ բան մը աւելի՝ բայց եթէ ի լաւագոյն Օրինակաց, որոնց կրնանք դեռ սպասել. սակայն ով կ'ուրանայ թէ նոյները սրբութեան յարկաց մէջ Աստուծոյ սեղանոյ առջեւ ի հանդերձս փառաց, ինչպէս որ երբեմն եղան, մտածելով՝ քիչ մխիթարութիւն տպաւորեն եւ մեր նուիրագործական իրաց ծանօթութեանց կամ պատմութեան ոչինչ յաւելում ընեն։ Անոր համար տկար փորձ մը հոս սա նկատմամբ՝ չէ առանց օգտի ստուգիւ, թէպէտ լաւագոյնը մնայ ապագային։*

---

## Ա.

### ՑԱՃԱՐՔ

*Քրիստոնէութեան հետ՝ արդէն անգիր ժամանակներէ յունական ἐκκλησία բառն իրենց մէկ սեպհական արտաբերութեամբը "Էկեղեցի" ընելով առած են Հայք, առաջին հայոց շրթունքն սաստիկ այլափոխելով։ Հիմակ մոռցուած զանազանութիւնը, զորն որ հինք կ'ընէին տաճարաց անուն տալու ատեն, իրենց քով անսովոր չէինք գտներ։*

---

* Կանխաւ ըսենք որ Հեղինակէն է այս մասը, բայց նախնապէս դրուած էր Նազիանզեան չորս Պատարագներէն ետքը (իբր էջ 340)՝ հանդերձ ուրիշ Յաւելուածով մը՝ "Հերձուած ու Հանգանակ": Հանգանակի քննութիւնն արդէն հրատարակուեցաւ զատ գրքուկով (Վիեննա 1891). միւսը կամ Հայ եկեղեցւոյ կրօնական Պատմութիւնը Հինգերորդ դարու վերջերէն սկսեալ՝ նոյնպէս առանձին գրքուկով հրատարակուելու արժանի է, ուստի հոս չենք դներ: Իբրեւ Յաւելուած պահեցինք միայն այս կտորը՝ որ մատենիս նոր ընդօրինակութեան (ի Հ. Քերովբէ Սպեննեան) մէջ ալ դրուած էր միւսներուն հետ հոս գրքին վերջը: Այս "փոքր ի շատէ" գրութեան նպատակն է միայն Ե—Զ դարերու հնութեան քողն ըստ մասին պարզել. անցողակի յիշուած են յետագայ ժամանակաց մասին քանի մը կէտեր: Լիակատար գրութիւն մ'այս ամէն խնդիրներուն մասին տակաւին չկայ. թէեւ զգալի է պէտքը:
ՀՐՏՐ.

"Տուն Աղօթից" Ս. Գրոց ասորութեան համեմատ,[1] ինչպէս նաեւ "Տուն աղօթից" (εὐκτήριον կամ προσευκτήριον)[2] համարուած է:[3] Ի մասնաւորի մարգարէի մը նուիրածը, այսինքն՝ ուր անոր նշխարքը դրուած էր, կ'ըսուէր "Մարգարէարան" (προφητήριον), ինչպէս Առաքելոյ մը նշխարաց նուիրածը՝ "Առաքելարան" (ἀποστόλειον): Հասարակ վկայ կամ Մարտիրոսի մ'անուամբ շինուածը "Վկայարան" կամ յունարէն-հայերէն "Մարտուրն".[4] մեր հիներն ալ Երուսաղեմայ Յարութեան տաճարը կ'անուանեն Մատուռն գերազանցութեամբ՝ μαρτύριον. մեր ամենէն հին Ընթերցուածը (Lectionarium) կ'ըսէ տեղ՝ "Ժողովին ի սուրբ Մատուռնն... ապա պատարագ մատչի ի սուրբ Մատուռնն, առաջի սուրբ խաչին":

Վաղարշապատու Դ. դարուն սկիզբը Հայոց դարձին առեն "տաճարը" կամ "Եկեղեցին" էր գլխաւոր եպիսկոպոսութեան կամ կաթողիկոսութեան կեդրոնը: Ասոր կեդրոնն ունէր 4 սիւնք, որոնք բոլորաձեւ խարիսխներու վրայ կեցած՝ իրենց գլուխներէն կամարներ իրարու կապուած գմբեթ մը կ'երթան կապելու վրանաձեւ: Խաչ մը նոյնը կը պսակէ դրսանց: Ասանկ՝ առաջին Ս. Գրիգորի եկեղեցին, ինչպէս կը նկարագրէ Գրիգորի Տեսլեան գրողը՝ առ Ագաթանգեղեայ:

Ի՞նչ ունինք մեր աւերման եւ կործանման նուիրուած մեծատարած երկրին մէջ այնչափ յաճախութեամբ եւ բուռական զանազանութեամբ, որչափ մեր Հնոց եկեղեցական ճարտարապետութեան յիշատակարանները: Գովութեան արժանի են եղած նորագոյն գիտողութիւնները Շահխաթունեանի, Հ. Ներսիսի, Neale-ի, Ալտըլպերդի: Սակայն պէտք ունինք դեռ խորագէտ՝ արուեստով եւ գիտութեամբ ընդունակ շրջողներու եւ գիտողներու՝ որոնք դնեն առաջքին իրաց տեսքէն կամաց կամաց այնչափ ներքին մանր տարակոյններուն լուծման ատենին, մանաւանդ հնագոյն մասին նկատմամբ: Կը վկայուի միաբան՝ շրջող ակնատեսներէ, թէ չկայ ուրիշ քրիստոնէական երկիր մը՝ ուր այնչափ կեցած ըլլան այսպիսի յիշատակարաններ պահելով իրենց նախնական կերպարանքը, ինչպէս Հայոց հողը՝ զորն որ գողցես թողուցին եղան անոր աւերիչը եւ չունեցան ժամանակ ընդ երկար գործածութեամբ, բառ մասին կամ ի հիմանց — ինչպէս կ'ըլլայ միշտ — նորոգելու. անանկ որ ասս շէնքերուն շատերը այսօրուան օրս անապատի մէջ են, մարդիկներէ հեռու մնալով պահուած են շատերն ըստ բաւականին լաւ, ոմանք — ինչպէս ճանապարհորդք կը հաստատեն, — կարծես թէ նոր շինուած, թէպէտ եւ ի պատմութենէ բաւական որոշ ըլլայ անոնց շինութեան ատենը:

Բոլորին մէջէն գրեթէ ի սեռին միակ յիշատակարան մըն է՝ որուն սիրով մը հոս կը հրատարակենք, Տեկորոյ վկայարանը՝ որուն մէջ մեր մինչեւ ցայս վայր յառաջ բերած ղափարագիրերը առաջին գործածուած են՝ նոյն իսկ Մեծին Յովհաննու ատեն. (տես Պատկ. Թիւ 1):

Տեկոր Անիէն 4 ժամ հեռու գեղ մը (ինչպէս Հ. Ներսէս "Տեղագրութիւնք ի Փոքր եւ Մեծ Հայս" էջ 205 կ'ըսէ), վկայարանը 24 մեթր երկայնութեամբ եւ $14^{1}/_{2}$ լայնութեամբ, տակի գմբեթը 4 ստուար սիւներով վեր-

---

[1] Ագաթ. եւ Ղ. Փարպ.:

[2] Փ. Բուզ. Դպր. Գ. Գլ. 3. էջ 7:

[3] "Աղօթարան" կամ "Աղօթանոց" բառուած՝ կանոնագիրք: "Սրբարան" (ἁγιαστήριον)՝ նոյն տեղը: Բաւական եղբը նորաձեւութեամբ յոյնին սերտիւ յարելու համար "Կոչարան" կամ "Ժողովարան" կամ "Ժողովրդանոց"՝ կանոնք Սահակայ ընծայեալք:

ջացած, խորհրդանոցք կամ սարկաւագատունք յաջմէ եւ յահեկէ կրկնայարկք։ Արտաքին տեսքը կ'առնուի «Նշմարք Հայկականք»* մանրագրեալ հրատարակութենէն։ Հ. Ներսէս ամէնէն հին յիշատակարանը՝ զոր արեւմտեան դրան աղեղնաձեւ քարաւորին վրայ կը կարդայ, այսպէս պակասաւոր (էջ 206) յառաջ



1. ԵԿԵՂԵՑԻ ՏԵԿՈՐՈՑ

կը բերէ.** «Հիմնեցաւ տեղս ի ձեռն Յովհաննու Հայոց Կաթուղիկոսի եւ Յովհաննու Արշարունեաց եւ Տ..յոնի Տեկորոյ սանոյ երիցու եւ Մանանայ հազարապետի, յիւր բարեխաւսութիւն եւ բոլոր ազգին եւ ողջեաց եւ մեռելոց — եւ Սրբոյ Սարգսի՝ Սահակ Կամսարական շինեաց զայս վկայարան»։

---

* Հ. Ղ. Ալիշան, «Նշմարք Հայկականք» Պրակ Գ, Նկար 33 եւ 34։ Նոյն եկեղեցւոյն արտաքինն այլեւայլ կողմանէ եւ ներքինն նաեւ «Շիրակ», էջ 131–134՝ առնուած նախնաբար Texierի ծանօթ գործքէն, Description de l'Arménie, la Perse etc. Paris 1842, Pl. XXV–XXVIII.

** Հ. Ղ. Ալիշան, «Շիրակ», էջ 132 այսպէս ունի «Ուրանայ եւ Հոռո... [ե]պիսկոպոսի եւ Տ...յոնի Տեկորոյ վանաց երիցու եւ Մանանայ հազարապետի հիմնարկեցաւ տեղիս ի ձեռն Յոհաննու Հայոց կաթողիկոսի եւ Յոհանու Արշարունեաց. յիւր բարեխաւսութիւն եւ բոլոր ազգիս եւ ամուսնի եւ ողջեաց եւ մեռելեաց եւ սրբոյ Սարգսի, Սահակ Կամսարական շինեաց զայս վկայարան»։ Այսպէս ալ կը դնէ Հ. Ներսէս (անդ, ծան. 1), որ ըստ այսմ երկու ընթերցուած յառաջ կը բերէ։ Ընդհանրապէս ամբողջ արձանագիրը վերաքննութեան կարօտ է. ըստ Ալիշանի «Մանան» ըլլայ թերեւս Վահան Մամիկոնեան։

Սահակ եւ (երիցագոյն) Ներսեհ՝ Արշաւրայ Կամսարականի որդիք էին, որն որ Յազկերտի հալածանաց կապեալ նախարարաց մէջ երեւելի էր։ Ներսեհ եւ Սահակ Վահանայ Մամիկոնենի[1] հետ Պարսից դէմ կռուեցան աջակից։ Ուստի Սահակայ Կամսարականի տունն Յովհան Հայոց Կաթուղիկոսը Մանուչակունին է, ինչպէս նաեւ Յովհան Արշարունեաց (Տէր)։

Աւելի ճշգիւ Թուականը կը գիտնայինք, եթէ լաւագոյն կարդացուած ըլլար առաջին յիշատակարանին առաջին մասը։

Սրբոյն Սարգսի յարգութիւնն աւելեւելայց քան թէ Յունաց մէջ յաճախ արդէն Ե դարուն[2] առաջին կէսէն մեզի ծանօթ է. Սերգիոս անունն այլափոխուած է ի Սարգիս՝ ըստ մասին համառօտութեան միոյ վանկի։



2. ՅԱՏԱԿԱԳԾԻ ՏԵԿՈՐՈՅ

Շէնքն ի փոքրկութեան սուսար՝ այսչափ զարերու հետ ոգորած է։

Մեր Տեկորոյ մատրան յատակագծէն (տես Պատկ. 2) կը տեսնենք որ երկու սենեակք կան յաջմէ եւ յահեկէ բեմին, որոնք որ — ինչպէս յայտնի է, — առոր յատուկ չըլլալով՝ բոլոր Հայաստանի եկեղեցեաց եւ վկայարանաց կը վերաբերին։ Աս սենեակները միշտ իրենց զանազանիչ հայկական ձեւն ունին. այսինքն արեւելեան կողմը Յունականներուն պէս apsidal չեն, հապա շիտակ գծով են, այսինքն երկայնաձեւ քառակուսի մը կը կազմեն։ Աս սենեակներուն անունը Առաքելական Սհմնդրց. մէջ[3] παστοφορία կ'ըսուի՝ այսինքն Սրսկապանք, Վարագուրաձիգք. իրօք ալ ի հնումն ունեցած պիտ'որ ըլլան առոնց մուտքերը մէյմէկ

[1] Ղ. Փարպ. էջ 495։

[2] Բիւզ. Դպ. Դ Գլ. Ժ. (տպ. Վենետ. 1832, էջ 101—2) Սուրբք Սարգիս եւ Թէոդորոս։

[3] Տես վերը, էջ 91—95 բաժնին։

սրահակք. դեռ 200 տարի ասկէ առաջ մէջտեղ կար սովորութիւնը։ Սակայն անունը մեր քով հասարակօրէն կ'ըսուէր "Սարկաւագատուն" (առ Ինճիճէի), յունական՝ διακονεῖον. եւ "Խորհրդատուն" կ'անուանեն արդէն Ը դարուն։[1]

Տեկորոյ մատրան ճակատը գտնուած բոլորակ ձեւը՝ վրան խաչաձեւ նշանուած, կրնա՞յ արդեօք սրբազան Հացն ըլլալ։ Խաչը՝ որն որ յարկին ծայրը զետեղուած է, պարզ՝ եւ ոչ յունական է, թէ որ արուեստաւորին վստահինք։

Բայց մենք որ կ'ուզենք լուռ ինչ մանրամասնութիւն ստանալ, դարձեալ կ'ուզենք քիչ մը ճամբայ բանալ առջեւնիս, խօսելով քիչ մը ան երկասիրութեան վրայ՝ որն որ "Տեսիլ սրբոյն Սահակայ" կ'անուանուի Ե. դարէն։ Ասիկայ Ղ. Փարպեցի՝ Կաթողիկէին Վաղարշապատու երեցը՝ Ե. դարուն վերջերը մեզի անանկ ինչպէս որ կը գտնէ կու տայ։ Մեզի, ինչպէս ուրիշ առթիւ ըսուած է, նպատակներուս ծառայելու համար՝ Սահակայ տեսլեան ստուգիւ եղած ըլլալը կամ չըլլալը հոգ չէ. բաւական է որ ան ատեն եւ ոչ ետքը մէկն այսպէս խորհեցաւ եւ գրեց եւ ան գաղափարներն ունեցաւ։

Լեզուն Ե. դարուն շատ վերջերը չ'իյնար, երբ որ յունական Կանոնաց Թարգմանիչն արդէն գիտէ աս Տեսիլը։

*Հրեշտակ մը տեսնուածին մեկնութիւնը կու տայ. այս մեկնութեան գլուխն ալ սանկ գրուած է. "Մեկնութիւն տեսլեան սրբոյն Սահակայ ի հրեշտակէն Աստուծոյ, զոր եցոյց յայտնի ըստ իւրաքանչիւր գլխոց եւ միոյ միոյ տանց, վասն կենաց մարդկան եւ կատարածի աշխարհի։ Արդ գրեցաք զտեսիլն խորհրդաբերեալ, եւ զմեկնութիւնն՝ ստուգաբերեալ։"[2] Չէ թէ իրմէ, այլ տեսիլը տեսնողէն գրուած է՝ կ'ըսէ Ղազար։ Առաջին մասին նկատմամբ՝ գրեթէ աւելորդ է մէջ բերել իւր վկայութիւնը. վասն զի արդէն լեզուն Ղազարայ չէ, իւր ժամանակէն մաքրագոյն եւ հնագոյն ըլլալով. խնդիրն երկրորդ մասին վրայ է։ Սահակ որն որ աս տեսիլը տեսեր այսպէս՝ գրով ալ թողուցեր է, կ'ըսէ Ղազար, ինչպէս նոյն իսկ տեսլեան խօսքերն ալ կը պահանջեն։ Կրնայ պարթեւ Հայրապետը տեսիլք մը տեսած ըլլալ կամ ոչ, նոյնը պատմած ըլլալ կամ ոչ՝ երբ որ կ'ուզէին նախարարք որ իրեն կաթողիկոսական իշխանութիւնը նաեւ պարսկական Դրան կողմանէ հաստատել տան։ Սակայն դժուարաւ կրնանք համոզուիլ թէ ասիկայ այնպիսի տեսլեան մը վաւերական գրութիւնն ըլլայ։ "Գիրք Թղթոց" (Ագաթանգեղեայ) մէջ գտնուած տեսլեան հետ ասիկայ զոյգ մը կը կազմէ, բազմօք անկէ աւոր առնուած ձեւ, գաղափար, խօսք եւ բառ։

[1] Յովհ. Իմաստ. էջ 140. "Խորհրդանոցքն յաջմէ եւ յահեկէ ցուցանեն տպաւոր եկեղեցւոյ եւ անպակաս ունել զտուրս աղօթութեան տաղ-աղքատաց," Լամբր. (Մատենագրութիւնք, Վենետ. 1847, էջ 84) դեռ կ'ըսէր սանկ պատարագի մեկնութիւն գրած ատեն թէ "սարկաւագունք զմաղզմայն եւ զսկիհն եւ զփշոյն բերեն ի սենեկէն ի սեղանն եւ սեղանոյն ածեն արտաքս ի բաշխումն" եւն։

*—* Այս աստղներով միջանկեալ հատուածն առինք հեղինակէն առաջին գրութենէն կամ թղթոց մէջ գտնելով. վերջնական մաքուր ընդօրինակութեան մէջ դուրս ձգուած էր։ ՀՐՏՐ.

[2] Այս նոտրգիր նշանակուածները, որոնք (Փարպեցւոյ) 1793ի տարւոյ տպագրութեան մէջ չկան, Հռոմայ Museo Borgianoի բնագիր ընթերցուած ունեցող օրինակէն են եւ հարազատութեան ամէն նշան ունին։ Այսպէս ուրեմն գլխերով զատեր է ի սկզբան աս տեսիլք շինողը. ընդօրինակողք չպահելով աս գունոց զանազանութիւնը, հարկ համարուեր է վերջապէս սոյն ծանուցումն ալ։ Իսկ 1873 տարւոյն տպագրութիւնը, մեզի անծանօթ պատճառով, բոլորովին զանց կ'ընէ աս վերնագիրները, թէպէտ աւոնք անտարակոյս նախնական են.

*Սակայն ի՞նչ մեզի ասկից, ըլլայ ինչպէս որ կ'ուզուի. մեր առաջիկայ վախճանին համար՝ որ Ն. գտրոս յիշատակարան մը պէտք է՝ ըլլայ ասիկայ վաւերական թէ անվաւերական՝ մեզի հիմայ հոգ չէ։ Բարեբախտութեամբ միմիայն նենքուսս (ըեզուէն եւն) չէ որ աս հնութիւնն իրեն կ'ընծայուի։ Ջունինք ամենեւին տարակոյս որ ասիկայ այսպէս առջեւն ունէր նաեւ Մ. Խորենացի եւ նոյնէն հանելով կը նշանակէր վերոյիշեալ դէպքը։ Վասն զի մեր Տեսիլքը, ինչպէս որ Ղազար յառաջ կը բերէ, յառաջ եւ վերջը պատմութիւն կամ տեղեկութիւն մ'ունի Եղծ Լուսոյ մը գրուած, որուն կը հետեւին թէ Ղազար եւ թէ ծերունի Բագրեւանդայ եպիսկոպոսը։*[1] *Այս ժամանակներէն քիչ յառաջ կրնայ ըլլալ այն անանուն Կանոնաց Հաւաքողը՝ որն որ Շահապիվանու ժողովոյն կանոններուն գլուխը յառաջաբան մը յօրինելով կը յիշէ աս Տեսիլքը, անոր մէջ ակնարկութիւններ գտնելով՝ իբր գուշակութիւն կարգի եւ կանոնի խանգարման, որուն դարման տանելու կը ժողովին Շահապիվանու Հայք (իբր 447ին), միեւնոյն ատեն յայտնելով աս Հաւաքիչը թէ ինքը բաւական հեռու է այս ժողովոյն ատենէն, Վարդանայ Մամիկոնենից եւ անոր ազգատոհմին նահատակութիւնները գիտէ, ուստի իբր 470—480ին (Վահանայ Մամիկոնենի ատենները) կը յօրինէ իւր հաւաքումն՝ որն որ Մանդակունւոյն ալ անծանօթ չէ, ինչպէս ուրիշ տեղ մ'առիթ կ'ունենանք ցուցընելու։ — Մեր տեսլեան յօրինողը, հրեշտակին բերանը դրած խօսքերով, բաւական ճիշդ իր բարեպաշտական նպատակ ունեցող աշխատասիրութեան ժամանակը կը ցուցընէ, այսինքն 451էն Վարդանայ մահուանէն, Վասակայ դրժմանէն եւ ուխտապահ նախարարաց կապանքէն ետքը. ուստի իբր 460ին, դուցէ քանի մը տարի ալ ետքը յարմարցուած գրութիւն մըն է հիմա ձեռքերնիս։*[2] *—*

---

[1] Մ. Խոր., Գիրք Գ, գլ. ԿԶ. «ի բազում թախանձելոյ նորա հարցանելով՝ պատմեաց զանձինն, զոր յաղագս տան գնդի ժամանակաց երեւեցաւ նմա ի տեսլեան՝ տարեգրեալ յայտնութեամբ. Զոր լուեալ նախարարացն եւ գիտացեալ՝ թէ յաստուածային հրամանէ գաղափարեաց յայտնէ նորա քահանայապետութիւնն, յորդորեալ հաւանեալ» եւն։ Մեր Տեսիլն ալ, ըսինք, ներածութիւն եւ վերջ ունի, որմէ Ղազար կը հաւաքէ իբր թէ Սահակ ի թախանձելոյ նախարարաց կը բռնադատի պատմել թէ «յաղագս տան գնդի թագաւոր յառաջագոյն» ցուցուած ըլլայ իրեն «յերեւելոյ լոյսն երկնից այս յայտ եղելոյ... Լսեալ զայս ամենայն խօսս բազմութիւն ամբոխին Հայոց... յորդորեալ հաւանեալ զարհուրեցան... եւ ոչ ոք իշխէր այնուհետեւ յաղագս այսպիսի բանից խօսել ինչ ընդ որբոյն» եւն. (Փարպ. տպ. 1873, էջ 78—79 եւ 102։) — Յառաջ քան զեպիսկոպոսութիւն պատահած կը պատմէ (Ղազարայ քով) աս տեսիլքին պատմութիւնք գրողը. Հ. Աւետիքեան կ'ուզէ որ Սահակ ան ատեն դեռ սարկաւագ եղած ըլլայ. (Բառգիրք Հայկազնեան, Յաւել.։)

[2] Ղազար Փարպ. տպ. 1873, էջ 97—99. «Եւ որ երեւեցաւ քեզ բազմութիւնք ազգաց շուրջ կալեալ ի վերայ արծաթի սկտեղն, զուարթառատ ցնծալից ուրախութեամբ. զի ահա յորդորեալ զուարճացեալ որ տեսեր դու յարարչէն՝ եւ յետ բազում չարչարանաց, առնել ընդ զօրութեամբ (— այսինքն՝ ի զաւակէն Սահակայ ծնեալ Վարդան, Հմայեակ եւ Համազասպեան եղբարք Մամիկոնեանք, —) ընդ որս միաբանեալք եւ այլ բազմութիւնք լաւ ալանց յազգէ նախարարաց Հայոց. որք զօրացեալք սուրբ բանիւն Աստուծոյ եւ զվարուցմունս թագաւորաց եւ զզօրաւորաց իշխանաց առ ոչինչ համարեալ արհամարհեսցեն. չհայելով ի մեծութիւնս ոսկւոյ եւ ոչ ի փառս առժամայնս. ընդ որոց վաճառեալ զմարմինս զփառս անեղծին Աստուծոյ՝ ընդ անուն եւ ապականացու կենաց աշխարհիս, առնելով զնոյն (— այսինքն՝ Վարդանեանք. —) վասն զի մօտ է առ դուռն վաճառ թուլացելոցն ի կորուստ, եւ հասեալ կայ հուպ օգնութիւն զօրացելոցն ի փրկութիւն.... Յորոց ոմանք կատարելութեան հասեալք՝ մարտիրոսական պսակին լինին արժանիք... եւ ոչ միայն յարանց, այլ զաւակին եւ ի կանանց որք թէպէտ եւ ոչ արով, այլ ի շնորհաց սուրբ Հոգւոյն զօրացեալք՝ բազում քաջագործութեամբք կատարին» եւն։

Արդ Ս. Սահակ Մեծ Հինգշաբաթ ուն օրն ի պահոց եւ ի աղօթից դիտելով լնկերջ բռնեցաւ ընդ երկիւ գտնուելով Վաղարշապատու եկեղեցին իր աթոռոյն վրայ կը տեսնէ ի տեսլեան, ի մէջ այլոց՝

"(Տեսիլ Ս. Սահակայ Պարթեւի... յորժամ նստէր ի սուրբ եկեղեցւոջն ի վերայ բեմբին մերձ առ սեղանն Աստուծոյ ի սուրբ կաթողիկէին...)"

"...Երեւեցաւ ինձ յերկրի բեմ չորեքկուսի ամպեղէն...։ Եւ ի վերայ բեմբին երեւէր անապատեղ յոսկւոյ սրբոյ խորանարդ... ծածկեալ յոյժ բարակ կտաւով, ոսկեհատակափայլ գունով։ Եւ ի վերայ խորանաձեւ ծածկութեանն յայտնապէս նշան աէրունական խաչին երեւէր...։ Եւ յանկարծակի եղեւ շնչումն խաղաղասիրդ օդոյ, եւ բացաւ փեղկ մի ծածկութի կտաւոյն։ Ընդ որ հայեցեալ տեսի, եւ ահա կայր ի վերայ բեմբին սեղան չորեքկուսի ականակապ ի բազմագունի ականց ընտրելոցեալ։ Եւ ի վերայ սեղանոյն կայր հաց մի սուրբ եւ ողկոյզ մի խաղողոյ...։ Եւ ընդ ահեկէ բեմբին տեսի աթոռ մի բարձր չորեքկուսի, ծովագոյն սառնակերպ, ծածկեալ թանձր կտաւով թխագոյն։ Եւ վերացաւ կտաւն ի շնչմանէ քաղցր օդոյն եկելոյ. եւ տեսի, եւ ահա սկուտեղ մի մեծ ի վերայ աթոռոյն, եւ ի վերայ սկուտեղին կայր նափորտ մի բեհեզեայ ծալեալ եւ եդեալ, եւ առ նմին գունդ մի ոսկի բոլոր...։

"Տետրակերպն ոսկի որ ի վերայ բեմբին՝ զորով էր արկեալ մաքուր կտաւն եւ բարակ. որով ծածկեալ էր սուրբ սեղանն եւ որ ի նմա խորհուրդն...։ Ցորոյ վերայ տեսանէի կանգնեալ զնշան կենդանացուցիչ խաչին՝ որ երեւէր...։ Եւ զի եղեալ օդ քաղցրաշունչ, որ եբաց զկտան ինչ կտաւոյն...։ Ընդ որով կայր սեղանն ոսկի ի պատուական ականց ընտրելոցեալ։"

Ահա սրբոյ կաթողիկէին ներքին կողմը մի բանիւ մեզի Սահակայ Տեսիլը. հոս բեմ կամ շատ անգամ բեմ (βῆμα = բարձրութիւն), խաւամբք ասանկ անուանուած, վասն զի — ինչպէս Մամբրէի մատուռէն այլ գիտենք, — բաւական բարձր էր։ Մեր բեմը՝ որն որ անշուշտ աշտիճաններ ալ ունէր, չէ հիմնկուան յունական բեմին պէս։ Բեմը չորեքկուսի է երկայն, բոլորակ աղեղնաձեւ (ἁψὶς) մը չկազմելով, այլ ուղիղ գծով՝ ըստ հայկական ոճոյ։

Բայց որն որ մեզի հիմայ թէ ըստ անուան եւ թէ ըստ իւրն տարօրինակ կու գայ, վասն զի շատոնց մոռցուած ենք, բեմին վրայ Տետրակէղ մը կայ։ Ուրիշ բան չէ համարիր ասիկայ մեր Հայկազնեան մեծ Բառարանը՝ բայց եթէ Ցունաց քով սովորական եղած հազիւ ափին մեծութիւնն ունեցող երկու խաչու վրայ դարձող երկոտանի աղնիւ մետաղէ շինուած կազմածքը, որն որ խաչմէ 90 աստիճանի բացուած ժամանակ չորս ոտից վրայ կը կենայ՝ "Աստղ" (ἀστὴρ) ըսուած՝ մանր կտրուած հացերը մաղզմայի մէջ քողէն անխախտ պահելու համար։ Անլուր եւ անծանօթ մեր պաշտամանց համար, եւ առ Ցոյնս, ինչպէս կ'երեւայ, ոչ այնչափ հին։ Ցայտնի է որ շատ փոքր է աս Աստղը մեր բեմին մէջտեղը դրուելու, բայց աւելի եւս՝ տեսնելու. մինչդեռ Տետրակեղը չէ թէ սուրբ հացը՝ հապա բովանդակ սուրբ սեղանը կը ծածկէ։ Ցոյները դեռ իրն ունին նոյնպէս, այլ ոչ նոյն անուամբ՝ որով մենք իրենցմէ ան առեր ունեցած ենք։ Ուստի հոս պահուած մեր Տետրակեղին (τετρασκελὴς) ուրիշ տեղ հելլենական անուանակոչութիւն տրուած է ան իրին՝ որուն Κιβώριον, (Ciborium, Umbraculum) կ'ըսեն Ցոյնք եւ Լատինք։ Ասիկայ է Վաղարշապատու տաճարը տեսնուածը, այսինքն չորս սիւներով խորանարդ կազմուած մը մէկ գմբէթի

կամ վրանի ժողվելով, խաչ մը գագաթը։ Ասիկայ սրբոյ սեղանոյն հովանի մըն է՝ որն որ բեմին վրայ կը կենայ եւ յիշեալ նուարտաններով աներեւոյթ է, սուրբ Խորհրդեան տեսակներն ունենալով։ Ուստի ունի ծածկութիւն մը բազմաման՝ այսինքն ըստ Թուոյ սեանց՝ փեղկեր, կամ չորս փեղկք կամ նուարտանք՝ զորոնք կրնանք լիպարու աղխաղեալ համարիլ, բարակ եւ սպիտակափայլ կտաւէ, ուրեմն ճերմակ, ոչ այնչափ Թափանցիկ։

Յոյնք Թէպէտ այսօրուան օրս չգործածեն աս հին տետրասկեղ անունը՝ զորն որ մենք պահեր ենք առանց լիլին, սակայն պահած են անոնք իրը, եւ կը պահէ Հռոմ այսօր Ս. Աթանասի եկեղեցին. բայց ան ծածկութիւնը փեղկերով կամ վարագոյրներով շատոնց աներեւոյթ եղած պիտ'որ ըլլայ։ Հնուցմէ պահուած կը կենայ Ռաւէննայի 806-էն մինչեւ 810 շինուած Ս. Ապողինարի եկեղեցւոյն մէջ խորանարդը կամ Ciborium.[1] Սակայն մտադրութեան արժանի են Հռոմի հնուցմէ ունեցած տաճարները՝ որոնք զանազան նորոգութիւններէ ետքն ալ պահած են տետրասկեղին ձեւը, ինչպէս Ս. Պետրոս, Ս. Պօղոս։ Բայց ինչպէս Յունաց քով, նոյնպէս Հռոմայեցւոց քով վարագոյրք մեկէի եղած են, չի գիտցուիր՝ ինչպէս։ «Քահանայապետական գիրք» (Liber Pontificalis) ըսուած մատեանը ստէպ անոնց յիշատակը կ'ընէ, այլեւայլ քահանայապետաց այլեւայլ տաճարաց պարգեւած նուարտաններուն Թիւը նշանակելով. օրինակի աղագաւ՝ Vela alba oloserica rosata, quae pendent in arcu de Ciborio numero quator, իբրեւ տուեալ տաճարին Սրբոյ Մեծի Մարիամու (S. Maria Maggiore կամ Basilica Liberitana) ի Լեւոնէ Գ. Քահանայապետէ Թ' դարուն սկիզբը։

Ասոնց հակառակ կը կարծուի Թէ ըստ մասին վարագոյր պահելով՝ իրենց Տետրասկեղը պահելու փոյթ չեն ունեցած Հայք։ Մինակ հայկական նկարները մերթ ընդ մերթ, երբեմն նաեւ ընդօրինակութեան եւ հեռանկարի (perspective) կանոնները շատ տկար ըլլալով, պահած են աւանդութիւնը եւ ճաշակը՝ որն որ Հայոց քով եղած է։ Կրնան գիտուիլ նաեւ այլեւայլ գծագրութիւնները, որ Ձեռագրաց մէջ կը գտնուին։ Պատկերը, զոր յետոյ պիտի դնենք (տես Պատ. 7), մեր Տետրասկեղը կապուտակ կամ երկնագոյն կ'երեւցընէ, որն որ կրնայ ըլլալ անոր կանոնաւոր գոյնն՝ իբրեւ երկնից ձեւացուցում. բայց մեր Տեսիլը բովանդակ յոսկւոյ սրբոյ կը յօրինէ, սակայն այսպէս դիւրին չէ լին անշուշտ։ Գծագրութեանց մէջ Տեսլեան ակնարկած խաչի նշանը չենք տեսներ։

Աս Սեղանին վրայ դրուած «Հաց սուրբ» եւ Ողկոյզ մը խաղող «օրինակ մարմնոյ եւ արեան կենարար չարչարանաց» կը տեսնէ մեր Տեսանողը։ Աս ծածկութեանց սեղանն Տեառն, զորն որ քաղցր սիւք մը հազիւ քիչ մը բանալով նորա կը ցուցընէ, Թէպէտ Տեսլեան մէջ ասիկայ յոսկւոյ սրբոյ է, Թող ոսկին՝ քարեղէն* իսկ չէ, գոնէ հասարակօրէն ան ատեն՝ գիտենք, հապա փայտեայ.

---

[1] Թեսաղոնիկէ Ս. Գէորգայ եկեղեցւոյն մէջ մուսիոն (mosaïque) մը պահուած է Κιβώριον-ի վարագուրով. կը կարծուի Թէ Քրիստոսի 500 Թուականէն յառաջ ըլլայ։ — Տետրասկեղը սեղանոյն հովանին է. վասն զի նոյն իսկ ասիկայ «չորեքկուսի» մըն է հաւասարակող. գրեթէ մեր (քիչ մ'ետքը յիշելի) Պատկերին մէջն ալ անանկ ցուցուած է։ Վերյիշեալ Ս. Ապողինարի եկեղեցին ունի մուսիոն սեղան մը նոյն ձեւով. հագցուած մերինին պէս, բայց չորս ոտքի վրայ։ Մեր Պատկերին մէջ մտադրութեան արժանի է որ մէկ ոտքի (պատուանդանի) վրայ կը կենայ։ Ասանկ նաեւ ի Գաղղիա Anreol գտնուած շատ հին սեղան մը՝ մէկ պատուանդանի վրայ։

* Բուն սեղանի համար կանոն կար քարեղէն ընելու. այսպէս Կան. Ժթ Յովհ. Իմաստասիրի

գուցէ միմիայն բացառութիւն մըն էր։ Մեր Պատկերին մէջ միայն պատուանդանը կ'երեւայ, ան ալ քար է, գուցէ marmo bigio di color palombino, որուն Հայք ունէին հանքը։ Ծանօթ է Պետրոսի Առաքելոյ փայտեայ սեղանը՝ որն որ ի Լատերան կը պահուի։ Քարեղէն սեղաններու գործածութիւնը Ը. դարուն զօրացած է Հայաստան։ Բայց եթէ մեր Տեսլեան մէջ սեղանն "ականակապ" է եւ "ի բազմագունի ականց ընդելուզեալ", իրօք ալ այսպիսի սեղաններ տեսած էր Տեսլեան գրողը։ Ե դարուն կէսէն առաջ էր որ Վահան Ամատունի հազարապետ զօրաւոր հաւատովք եւ ձոխութեամբ մարմնաւորաւ (Մ. Խոր. Գ, կէ), Ս. Մեսրոպայ եկեղեցի մը կանգնելով յԱւշական՝ "տապաս վայելուչ, գունագոյն, պայծառատեսիլ, ոսկւով եւ արծաթով եւ ականց պատուականօք ի չքնաղակերտ սեղանոյն կենարար մարմնոյն եւ արեանն Քրիստոսի պատրաստեաց" կը գրէ Կորիւն՝ Սրբոյն աշակերտը։ Սակայն ո՞ւր արդեօք ընդելուզեալ էին ակունք։ "Ականակապս" ըսելով՝ շրջապատութեան գաղափար մը կ'երեւայ տալ։ Իրօք. Ը. դարէն յաճախ սեղանոյ դոտկին վրայ կը խօսուի։ Ասանկ Ցուց. Իմաստասիրի վերագրած Բ. Ճառն յիշեցնէ՝ խօսելով "սեղանոյն ոսկեղենեան" վրայ՝ կը յիշէ "պատկն պարապնդեալ։"[1] Ուստի շուրջանակի կապուած կազմութիւն մը (ոսկւով եւ արծաթով)։ Արդէն Ե. դարուն մէջ է որ մէկ սեղանոյն վրայ "չորեքին ճակատք" կը զանազանուին, "դլուխ" ըսելով քառակուսոյն կենդրոնը։[2] Նաքէն "չորեքին դէմք" ալ ըսուած[3] է։ Արիստ. Լաստիվ. Անւոյ եկեղեցեաց կամ Կաթողիկէին համար "Սեղան սուրբ խորհրդոցն" կ'ըսէ, "որ երբեմն ժամանակաւ իբրեւ զնորահարսն առագաստի չքնաղազարդ զարդարեալ էր՝ պատկ փառաց ունելով ի դէմս իւր"։ Ասկէ շատ յառաջ Ցուց. Կաթողիկոս Պատմիչ իրեն ատենը շինուած Երազգաւոր գիւղաքաղաքին մէջ Սմբատայ արքայի իրեն թագաւորական ապարանից մօտ շինել տուած տաճարին մէջ, "կամար եւս է համակ ոսկւոյ ականակապ յարդարեալ եւ ի քրիստոսական տապանէն եղեալ ածեալ" կը յիշէ։[4] Բոլորէն սա գաղափարը կ'ելլէ, կարծենք, որ մերթ պատկ եւ մերթ կամար ըսուածն ոսկի կամ արծաթէ շրջանակ մը կը կազմէր սրբոյ սեղանոյն կամ միայն ժողովրդեան կողմ եղող երեսակներուն եւ կամ (գուցէ աւելի հաւանական) բոլոր երեսակներուն պատելով։ Յիշեալ Կաթողիկոսին գործածած բացատրութիւններն աւելի վերջին ատման նպաստաւոր են, մանաւանդ եթէ վերը յիշուած "պարապնդեալ" բառը ճիշդ բռնենք՝ սեղանոյն չորս եզերքն ալ պէտք էր որ պատէր աս կամարը։ Հնոց սովորական էր սեղանին բոլոր բոլորտիքը գործածական ընել։ Մեր Պատկերը կապուած կամ "պարապնդած" բանի մը գաղափար չի ցուցըներ։ Սեղանոյն "զգեստը" բանուած կ'երեւայ հոն "կարմրով"։ Այսպէս կ'անուանէին հինք սեղանոյն ծածկոցները. "զգեցուցանել" էր զանոնք դնելը, "հոլանել" զանոնք մէկդի հանելը։ Նօթը կը համրուէին ատոնք. բայց մենք Պատկերին մէջ միայն

---

"Ոչ է արժան զսեղանն յորոյ վերայ պատարագն Քրիստոսի մատչի, փայտեղէն կանգնել կամ շարժուն, այլ քարեղէն եւ անշարժ հիմնացուցանել" եւն:

[1] Իմ. էջ 140, ինչպէս նաեւ Լաստիվերտացի՝ "Պատկ աւերունական սեղանոյն, փոշւով եւ մոխրով ծածկեալ." էջ 76։

[2] Մանդակունիէն գրուած՝ ի Նուակատիս Եկեղեցւոյ։

[3] Ցուց. Իմ. Ճառ Բ. յեկեղ. "ի չորեսին դէմսն սեղանոյն." էջ 127։

[4] Ցուց. կաթ. Գր. Լջ. տպ. Երուսաղեմ։

մէկ, վերջինը, կը տեսնենք: Չորս կողմանէ ուրեմն կը պատէր զանէ վերին ծածկոյթը բուսական վար իջնելով, բայց ոչ այնչափ որ սեղանոյն սիւնաձեւ պատուանդանը ըստ մասին չերեւայ: Երբ որ «սիւնք սեղանոյ» երբեմն կը յիշուին, անշուշտ չորս ալ եղած սիւնե՞րը ըլլան, եթէ Տեսլականեղիններուն իմանալու չէ ան տեղի:

*Բեմին «աջեակ» կողմը աթոռ մը (եպիսկոպոսական) կը յիշուի Տեսլեան մէջ, որուն ձեւը «չորեքկուսի» է, աստիճանօք «բարձր» կեցած, գոյնը «ծովային», միանգամայն կտաւով ծածկուած՝ որ սգոյն պատճառաւ մեր Տեսլեան մէջ թէ «թխագոյն» եւ թէ «թանձր» է այս անգամ: Այս աթոռը Սեղանոյն ձախ կողմը չըսուելով, հապա «Բեմին» ձախ կողմն ըսուելուն՝ հարկ չկայ զանիկայ բեմէն վար մտածել: Այլուստ գիտենք որ բեմի վրայ աթոռ ունէին մեր հինք ալ: Բուզանդ Ներսեսի յաջորդաց համար կ'ըսէ թէ զարդարուած «ի բեմ ելեալ նստէին:» Իմաստասէր (էջ 141) կը յիշէ «նստել քահանայապետին յաթոռ բեմին... եւ սեղանոյն բացումն» եւն՝ վայրագոյներով Տեսլականելին:

Մինչեւ ցայս վայր ըսուածն «եկեղեցւոյ» մը մէկ մասն էր, որն որ այժմն Ե դարէն Խորան կ'ըսուէր՝ «խորան սուրբ», «Սրբութեանն խորան» եւն, եւ որ բեմը, տեղապահեղը եւ սեղանը կը պարունակէր: Մէկալ երկու մասունք կ'ըսուէին յատուկ նշանակութեամբ՝ Տաճար (ναός), ուր հաւատացեալք կը ժողովէին (Յովհ. Իմ. էջ 140 եւն.) մէկ մ'ալ Գաւիթ կամ Երդատուն, ուր յանցաւորք կը կենային, երրորդն ալ յորջէ տակ: Նոյն Յովհ. Իմաստասէր (էջ 135) կը գրէ՝ «Եկեղեցի երեք ունի յարկաց պատրաստութիւնս, զՏրապէզն Գաւիթ եւ զՏաճարն եւ զՍրբոյ Սրբեանն խորան:» Ցուցնելու աղօթելու օրէնքը (— տես Առաք. Կանոն Ա եւ ուրիշներ —) Արեւելից եւ նաեւ Արեւմտից մէջ՝ դիրք մը կու տայ հարկաւ նաեւ Հայաստանի եկեղեցեաց: Կանոնաւոր էր լուսանցոյց մը արեւելքէն, ինչպէս նաեւ արեւմուտքէն, աջ եւ ահեակ ալ լուսանցոյցք ըլլալով: Իմաստասէր այս ամէնուն մասին ալ կը գրէ (էջ 139) թէ «Գիր շինուածոյ սորա Հանդէպ է արեւելից... լուսանցոյցն՝ յարեւելս... իսկ ի կողմանէ աջեայք եւ ահեկեայք, լուսաւորք են առաքինութեամբ. եւ որ յարեւմուտս է՝ նկատէ զնոյն որ յարեւելից մասնէ:» Սակայն հնագոյն եկեղեցիները կը յիշուին լուսոյ կողմանէ աղքատ՝ «Խրթին» կոչուելով**:

Ըսինք թէ՝ ինչպէս Տեկորոյ մատրանն յատակագծէն ալ կը տեսնենք, երկու սենեակք կան յաջմէ եւ յահեկէ բեմին, (παστοφορία, Սրսկապանք, վարագուրաձիգք): Ասոնց հնագոյն անունն մեր քով Ե. դարէն «Աթաւոտգանոց» է, բայց նաեւ «Խորհրդանոց» կ'անուանէին արդէն Ը. դարէն: «Խորհուրդ» կ'ըսուէին ընծաները՝ խորհրդեան պատարագի որոշուած ըլլալով. ասոնց նուիրումն ալ յաջմէ եւ յահեկէ սեղանոյն եղած սենեակներուն մէկուն մէջ կ'ըլլար եւ անկէ ի սեղան կը բերուէր:[1] Վասն զի, ինչպէս մեզի կ'երեւայ, յետնագոյն

*—* Այս աստղանշերով սկսած ու աւարտած հատածն ալ քաղած առած ենք Հեղինակին թղթերէն, բայց վերջին ընդօրինակութեան մէջ կը պակսէր: ՀՐՏՐ.

** Նշանաւոր է Յովհ. Կաթողիկոսի Պատմագրութեան (Գլ. ԺԸ, տպ. Երուսաղէմ, էջ 103) ըսածը՝ «Ապա հայրապետն Եզր զվկայարան Գայիանայ, զոր նորեւս խրթին եւ մթին էր զնա շինեալ, քակեալ զայն՝ եւս ընդարձակագոյն եւ պայծառագոյն զնա շինեաց կոփածոյ քարամբք եւ կրով ծուլելով. եւ պատուհասս յարդարէր կայանս բնակութեան քահանայական դասուց ի պաշտօն աստուածային խորանին: Այս եղեւ սկիզբն ժամատանն շինելոյ. մինչեւ ցայս վայր ոչ երեւէր ի Հայս:» ՀՐՏՐ.

[1] Յովհ. Իմաստասէրի եւ Ն. Լամբրոնացւոյ խօսքերը տես վերը՝ էջ 732 Ծան.: Բայց արդէն Լամբրոնացիէն յառաջ կամ անկախ

այսինքն Յունաց մէջ գաղթելէն եաքը՝ յարմարած են մեր հիմակուան երկու որոնց մէջ դիմացէ դիմաց բացուած խորշերը։ Այս երկու Խորհրդանոցներէն կամ Սենեակներէն մէկը՝ կ'երեւայ՝ եկեղեցւոյ սպասուց որոշուած էր, ուր զգեստաւորութիւնը կ'ըլլար, ընծաները առ Խորհուրդ կը պատրաստէին. իսկ երկրորդը՝ ժողովրդեան նուէրներէն եւ ողորմութեանց՝ որոնք աղքատաց եւ եկեղեցւոյ պիտոյից եւ անոր պաշտօնէից համար կը տրուէին։ Ստուգիւ աս խորհրդանոցներէն եւ ոչ մէկուն մէջ «սրբութիւնք» կը պահուէին։ Սրբագործեալ նուիրաց «Մնացորդք», ինչպէս վերը Մամբրէի անապատին երիցուն համար լսեցինք, «սեղանը» հանեց, զորն որ կ'իմանանք թէ հոն դրաւ ի պահեստ եւ ոչ այլ ինչ։ Յայտնի իսկ Ը. դարուն յիշուած կը գտնենք թէ «խորանին» մէջ կը պահուէր «պատարագի մասն»։[1]

Հիմա Խորանը կ'անջատէ Տաճարէն Վարագոյր մը. թէ այսպէս էր նաեւ Ը. դարուն սկիզբները, յայտնի վկայուած է։ Բոլոր եկեղեցին երեք մասի բաժնելով ասանկ կը մասնաւորէ Իմաստասէր (էջ 140). «Վարագուրին անջրպետութեամբ զառաջին երկնից ցուցանէ որոշումն... անջրպետ ընդ մէջ մեր եւ անմարմին էութեանց... եւ Տաճարն՝ ժողովատեղ հաւատացելոց... յորժամ կամք առաջի բեմին Քրիստոսի,... եւ Արտաքոյքն եկեղեցւոյն ժողովատեղ է յանցաւորաց։» Անոր համար կրնանք ապահովապէս աս մեծ վարագոյրին համար իմանալ։ Զ դարուն առաջին տասնեակները յօրինուած՝ Սահակայ տրուած՝ Կանոնաց ԺԱ կանոնը նոյնը կը յիշէ, որն որ կ'արգիլէ քահանայից՝ ծանր պատժովք՝ աշխարհական գործածութեան տալ վարագոյրը։ «Լսեմ, կ'ըսէ, թէ զեկեղեցւոյ զպաս, մանաւանդ զվարագոյր՝ ի հարսանիս յառագաստ փեսայի եւ հարսին, զսկիհ՝ գինի ըմպելոյ յանօթս սան զինուորաց... զոր յայժմ հետէ այլ ոք մի իշխեսցէ առնել. իսկ եթէ ոք գտցի արարեալ՝ լուծեալ լիցի ի քահանայութենէն։» Յովհ. Կաթուղիկոսի յիշած «դունակ գունակ երանգք առա-

---

նաեւ Մ. Գօշ կ'ըսէ՝ ան եկեղեցական կարգաց գիրքը յառաջ բերելով, զորն որ իրմէ եաքը Լամբրոնացւոյ եւ աւելի եաքը Օրբելեանի քով կը գտնենք՝ ըստ մեզ ամէնէն մաքուր վիճակին մէջ, թէպէտ գուցէ ոչ ամբողջ։

[1] Յովհ. Իմաստ. էջ 140. «Պատարագին մասն տնօրինաբար մնալ ի խորանին, այս է ոչ լինել դատարկ ի հաշտարար մարմնոյն Քրիստոսի եկեղեցւոյն, զի մի ասիցի այն՝ Պակասեաց կերակուր ի տանէ Աստուծոյ մերոյ։» — Սրբութիւնը «յաղաւնի» պահելու սովորութիւնը չենք գտներ Հայոց մէջ, թէեւ Բուզանդ նոյնպիսի ակնարկութիւն մը կ'ընէ հետեւելով Բարսղի վարուց. (տես վերն՝ էջ 174:) Խորհրդանոցներու սենեկաց տեղը բռնած են այժմ շատ եկեղեցեաց մէջ կրկին խորաններ՝ աւագ խորանի աջ եւ ահեակ կողմն՝ նոյն ուղղութեամբ կանգնած. եւ այս ձեւն ընդհանրացած իբր միակ հայկականը կը համարուի այժմ շատերէն: Էջմիածնի կաթողիկէն այժմ թէ կրկին սենեակներն եւ թէ կրկին խորաններն ունի սեղանոյն երկու կողմն՝ աջ եւ ահեակ: Բայց ասոնք ուշ ժամանակի են: Հնոց քով խիստ կանոն էր մէկ խորան մէկ եկեղեցւոյ, ըստ Լամբրոնացւոյ «միոյ Քրիստոսի մի սեղան բաւական է եւ բազմապատիկ պաշտօնեայք նմին սակաւք»: Կիլիկեանց ատեն յաճախած էր բազմաթիւ խորան կանգնել, բայց նոյն կանոնը պահելու համար՝ որմովք պատել իւրաքանչիւրն եւ զատ մատուռն ձեւացընել: Ասոր դէմ կ'ոգորի այնպէս սաստկութեամբ Լամբրոնացի. գրելով ի միջի այլոց (էջ 108) «Զամենայն եկեղեցւոյս սեղանովք ի պէտս այսօրիկ լցաք... Կ.Պոլսի մեծ եկեղեցին մի սեղանով բաւականացաւ, եւ Անւոյ Կաթողիկէն եւ Երուսաղէմի սուրբ Սիոնն եւ Անտիոքայ սուրբ Պետրոսն եւ Տարսոնի Սուրբ Սոփին ... իսկ ի վանքս քան զթիւ բնակողացն զսեղանսն բազմացուցաք» եւն: — Առ հասարակ Եկեղեցիք պարսպով պատուած էին եւ են ցայսօր. քաղաքական հանգամանքներն եղած են անշուշտ ասոր պատճառը. որուն համար արդէն Զ դարուն սկիզբը՝ Սահակայ տրուած՝ Կան. Բ կը սահմանէ՝ «զտաճարս աղօթից ... ըստ արժանի բաւականութիան զարդարուն պահեսցեն անխափան լուցմամբք եւ խնկարկութեամբք, եւ պարսպեալ քաղաքորմովք. եւ մերձ ի նա մկրտատուն շինեսցեն յաւանս:» ՀՐՏՐ.

գաւառին սրբութեան» (գլ. ԻԴ) եւ «շղթայշատեա տաճարի» (գլ. ԼՋ) պէտք ըս Խորանի՞ն տաճարը կամ վարագոյրը թէ Սեղանոյն կամ Տեառնակերպին տաճարատները կը ցուցընեն, եւ կամ հաւանականագոյն երկուքն ալ։ Լամբրոնացւոյ խօսքին նայելով՝ սարկաւագին անկ էր սա վարագոյրները գոցել եւ բանալ, եթէ առ այս պէտք է առնուլ իւր շատ անգամ յիշուած գրքին մէջ (էջ 84) գտնուած սա խօսքը. «Նոքին են աստուածայնոյ նուիրացն եւ պատարագի սպասաւորք եւ փողոյնէգ+, այսինքն՝ սարկաւագք։» Ասկէ աւելի ալ ինչ բանի կրնայ առնուիլ՝ չենք գիտեր։

Առանց մեծի զգուշութեան չենք կրնար յետագոյն՝ եւս եւ ԺԲ դարուն հեղինակներէն մեր սա ժամանակի շրջանին համար գաղափարներ առնուլ։ Լամբրոնացւոյն պատարագի հրահանգութեանց մէջ (էջ 205) Սարկաւագն աւետարանն առած կու գայ «յամբոնն եւ [illegible]» եւ կ՚ընթեռնու։ Աս «ամբոն» կամ «պատշգամբ» պէտք նախնական էր։ Կրնայ ըլլալ՝ եթէ հարազատ է եւ եկամուտ չէ նոյն եզրն ի Կանոնի «Նուակատեաց եկեղեցւոյ պղծելոյ»։[1] Ուստի ուրոյն կեցած տեղէն բարձրութիւն մը կար (կ՚երեւայ՝ փայտեղէն), ուսկից սարկաւագն ու կիսասարկաւագը (կամ Անագանոստ) ընթերցումները կ՚ընէին։ Չենք գիտեր թէ պէտք Հայաստանի այնչափ բազմաթիւ եկեղեցեաց մնացորդներուն մէջ սոր մէկ նշան մը կա՞յ (հարկաւ՝ քարեղէն)։ Ծանօթ ուղեւորները դեռ ասանկ բան մը չեն ծանուցած։ Անշուշտ սոր հետ պէտք չէ շփոթել ան «տեղի լռութեան ատեանին» ըսուածն ի Փարպեցւոյն, ուր մեր սակայ յիշատակած Յովհան Մանդակունի Ընթերցուածներէն ետքը կոս գոյ՝ խօսելու իր ճառը։[2] Գուցէ «Ատեան» ըսուած ըլլայ հոս «բեմը». վասն զի այդէն հոմանուն են բառերը, մէկը հայերէն, մէկալը յունական ծագմամբ. ուստի նոյն իսկ բեմին եզերքը, դէպ ի է մէջտեղը, ըլլայ ան «տեղի լռութեան»։

Կը տեսնենք որ դեռ Հայաստանէն դուրս չելած (Է եւ Ը դարուն) «ըստ դասուց» կ՚երգեցուին սաղմոսք փոխովակի։[3] Կրնանք սա «դասք» իբրեւ աջ եւ ձախ կողմ մասնել՝ սաղմոսասացաց խմբին, որոնք բեմին առջեւ կը կենային։*

Յընթացս Դ դարու Հայաստանի մէջ շինուած եկեղեցիք՝ կանգուն էին բոլոր Ե դարու մէջ, անշուշտ քիչ շատ նորոգութեամբ մը[4]. անանկ որ զանոնք ալ պէտք է մէկտեղ խմբել՝ երբ որ 200-ամեայ վանորայք կը յիշուին սոյն

---

[1] «Ցեառնագրեն զսեղանն ըստ առաջին օրինակին, նոյնպէս եւ զբոլոր եկեղեցին եւ զաւազանն եւ զամբոնն»։

[2] «Կարգադրմունս հրամայէր զտեղի Եղիցն իտրայելի... եւ զընթերցուածն՝ ուր Թագաւորեցոյց Դաւիթ զՍող.։ Եւ Եկեալ ինքն ի տեղի լռութեան ատենին... ասէր» եւն. էջ 548, տպ. 1873։

[3] Յովհ. Իմաստ. յիշեալ տեղը՝ «Տէր Թագաւորեաց. ըստ դասուց վերաձայնութեամբ»։

* Ընթերցողք յետոյ «փիլիսոփիս» անուանակոչութիւնը կը կրէին: Ասոնց մէջ ալ անուանիններ կը յիշուին. այսպէս (առ Յովհ. կաթողիկոսի Պատմագրի) «Սողոմոն հայր մեծի ուխտին Մաքենոցաց յետ Յովհաբու, վարժեալ ի փիլիսոփայական արուեստս... հմուտ լեալ փառաբանութեան կրթանաց» եւն: Քիչ չեն նման վկայութիւնք մերիններուն քով:

[4] Վաղարշապատու կաթողիկէն ի Վահանայ Մամիկոնենոյ ի հիմանց նորոգուեցաւ Ե դարուն վերջերը (Մանդակունւոյն ատեն). տես Թղթ. Ղազ. էջ 591. սակայն առաջուան նշանաւորութիւնը չպահեց. վասն զի Դուին եղած էր անկէ ետքը թէ քաղաքական եւ թէ եկեղեցական մայրաքաղաք Հայոց։

*դարուն վերջերը։[1] Ընդհանրապէս Դ դարուն եկեղեցիք՝ տեւեցին մինչեւ Է դար, յորում նոր եկեղեցեաց շինութիւնք ձեռք առնուեցան։ Յովհան Մամիկոնեան Ներսիսի Շինողի ժամանակակից կ՚ըսէ՝ թէ Հերակղի կայսեր օրերը, այսինքն Խոսրովայ մահուընէն ետքը, Հերակղի Կ. Պոլիս դառնալէն 8 տարի ետքը շինուեցան կամ նորոգուեցան — 1. յԱղտից վանս՝ Ս. Գրիգորի հիմնարկածը, այսինքն Աշտիշատու եկեղեցին ի Տարօն՝ անուանուած «առաջին եւ մայր եկեղեցեացն Հայոց»[3] — 2. Ս. «Կարապետն յԻննակնեանն» ըսուած «Մարգարէարան», կամ «Մատուռն Յովհաննու» ըսուածը[4] — 3. «Մատրավանն ի Տարօն» — 4. «Մեծ Կաթողիկեայն յԱստղաբերդ», եւ — 5. ի Ներսիսէ*



3. ԵԿԵՂԵՑԻ Ս. ՀՌԻՓՍԻՄԵԱՅ



4. ՅԱՏԱԿԱԶԵՒ Ս. ՀՌԻՓՍԻՄԵԱՅ*

*Մեծէ շինուած «Կաթողիկէ եկեղեցի ի Թիլն» յԵկեղեաց գաւառի»։ Ծանօթ է Հռիփսիմեայ եւ Գայեանեայ վկայարանաց (Կոմիտասայ առեն) ի հիմանց շինուիլը։*

*Թէ աս փոփոխութեանց առեն՝ որ սոյն Է դարուն եղան, եւ թէ անկէ ետքը մինչեւ բոլոր ԺԱ դար, այսինքն ցորչափ Հայք մինակ Հայաստան էին, երբեք չընդհատուած զարմանալի շինութեանց մէջ, որչափ հին հայկական ձեւերը պահուած են, մասնաւոր խուզարկութեանց կարօտ բան է։ Աս ստոյգ է,*

[1] «Աւերին զկնի իմ, զի չգայր ինչ ի տեղւոյն։ Զի ամենայն կահիւ կազմածով՝ եթէ առակաւ մի երեւէր նուազեալ քան զայնոսիկ՝ որք յերկերիւք ամէ շինեալ վանորայքն, չհամարէր զանձնս արժանի կալոյ»։ Փարպ. էջ 592։

[2] Պատմ. Տարօնոյ, էջ 58։

[3] Բուզ. Դպ. Գ. Գլ. 3։

[4] Բուզ. անդ։

* *Աստ մասին (նանդերձ պատկերաւ) տես* A. Daniel, Cod. lit. IV, 210—11, *առնուած ի գրոց ի* Nealeի *(էջ 173) եւն:*

եկեղեցական ճարտարապետութիւնը մեծ բարձրութեան մէջ էր Հայաստան. անանկ որ այսօրուան օրս որոշ նկարագիր մ'ալ ունի, որով ուրիշներէն կը զանազանի:* Հոխմձէի վկայարանը կրնայ իբրեւ Տիպ առնուիլ (տես Պատկ. 3 եւ 4), որուն նմանութեամբ նաեւ Վրաստան ինչ ինչ շինուած է: Արդէն դի-



5. ՅԱՏԱԿԱԳԾԻ ԿԱԹՈՂԻԿԷԻՆ ԱՆԻՈՅ

տուած է, ի մէջ այլոց, իբր հին հայկական Վաղարշապատու կաթողիկէն, զորն որ Տեսիլքը Թէ՛ Սահակայ եւ Թէ Գրիգորի կ'ենթադրին:

Տեկորոյ եկեղեցւոյն յատակագծին գիծ առ գիծ համեմատ է Անւոյ Կաթողիկէն. (տես Պատկ. 5) որուն նկարագիրը կրնանք յետին դարերուն շինուած

* Յատուկ նկարագիրներէն է չորս սեանց վրայ ամբարձող կաթուղիկէն գմբէթաւոր վրան խաչով: Յովհ. Իմաստասէր (էջ 143) եկեղեցւոյ նկարագրին կու տայ "չորից սեանց կառուցումն... եւ կամարացն միաւորութիւն... երկոտասան քարանց հիմնացելոց... իսկ գմբեթաձեւ խորանարդ բարձրացեալ ի ծայր զագաթանն ունելով զձաղկեալ նշան խաչին" եւն:

եկեղեաց մեծ մասին համար ալ նոյն համարիլ։ Այս վերջին ժամանակները աւելի քիչ են բոլորաձեւ յատակագծով շինուածները, որոնց կարգէն յիշենք միայն Ս. Գէորգ եկեղեցին՝ Հանդստատեան Գագկայ (տես Պատկ. 6)։*

---

## Բ.

## ՀԱՆԴԵՐՁՔ

Սրբազան զգեստներու վերաբերեալ, ծանուած նախորդէ մ'աւելի բան չէ յիշեր մեզի Տեսիլը. մենք յայսմ մասին ունինք քիչ մը պայծառ տեսութիւն



6. ՅԱՏԱԿԱԳԾԻ Ս. ԳԷՈՐԳԱՅ

ուրիշ կողմանէ, որն որ Տեսիլքէն աւելի է, իր է՝ Ն դարէն — ի՞նչ զանդաղենք ըսելու — յեպիսկոպոսապետէն Յովհաննու տրուած Հրահանգութիւն մը՝ զոր որ այնչափ հեռուանց կենալով՝ բախտով բաւական հասկնալու ալ միջոց ունեցեր ենք։

Բայց ամէն բանէ առաջ՝ սա Հրահանգութեան կամ Խրատու ընթերցուածն ստուգելու ենք, զոր որ ծանօթ հռչակաւոր հնագոյն երկաթագիր Մաշտոցը՝ Ս. Ղազարու Մատենադարանին՝ սանկ ունի. "Իսկ եպիսկոպոսն, — կ՚ըսէ, — որում հանդիպեցաւ փառաւորութիւն աւուրն (այսինքն նորաշէն

* Այս ամէն նկարները դրինք՝ ըստ դիտաւորութեան Հեղինակին, որ յատուկ ուրուագծերով պատրաստել տալ սկսած էր զանոնք, եւ քանի մ'ուրիշ յատակագծեր ալ, բայց ամէնը տակաւին կիսատ: Մեր դրածները եւ այս շինութեանց մասին տեղեկութիւններ տես Հ. Ղ. Ալիշան, «Այրարատ», էջ 237, 239. "Շիրակ", էջ 30, 65, 131, 132: ՀՐՏՐ.

վրայ. երեքը ներգործութեամբ կ'երեւան, միացածը ծածուկ կողմը մնալով, այսինքն աջ ուսոյն վրայ երեւցած 2ին գիծերը 2 մ'ալ, 2—3 մ'ալ դարձեալ վար կախուած ծայրը գտնուած խաչէն վեր:[1]

3. Կու գայ կարգը մեր՝ հիմա առջեւէն պատռած[2] եւ նոր անուամբ «Շուրջառ» ըսածնիս, բուն մեր Հայոց «Նափորտ կամ «Նաֆորտ ըսածը՝ որն որ դարձեալ ἀναφορεῖον յունականէն մասնաւոր պատուիրութեամբ իրենց անցած՝ Տեսլեան սկուտեղին մէջ էր՝ ծալուած: Հրահանգութեան խօսքին համեմատ «նշխարած» է. վասն զի ուրիշ է գոյնը դրսանց՝ ուրիշ ներսանց: Ըստ հաճոյս տրուած չէ ծիրանագոյնը, ինչպէս հիմա կը տեսնենք Պատկերին մէջ: Եպիսկոպոսին թիկանց վրայ երեւցած եռանկիւնին մօտ ամբողջացնելով բոլոր թիկանց վրայ՝ յայտնի է թէ Նափորտին վերի մասն է՝ ազնուագոյն (հաւանականաբար) ոսկեթել անկուած կտորէ մը յօրինեալ, ինչպէս միւս հանդերձանքներուն ալ[3], եւ ինչպէս դեռ 100 տարի մ'առաջ շինուած Շուրջառներու վրայ կը տեսնենք: Օրինակի աղագաւ Հնդկաստանէն մեր Կիլիկիոյ ուղղափառ Կաթողիկոսին ի պարգեւ ղրկուած ծանր Շուրջառին վրայ:

4. «Քառակ հրաշակերտ», որն որ կը պատասխանէ մինչեւ հիմա քահանային կամ սարկաւագին ընջքէն կրածին կամ կախածին: Զատ էր անշուշտ նոյն իսկ Ժ դարուն ու վերջիններուն կրածը՝ «Ուրար» կամ «Ոփառ» ըսուած[4]: Բայց եպիսկոպոսին վրայ թէ անուանակոչութեան եւ թէ Հրահանգութեան եւ արուեստին նկատմամբ արդարացած կ'երեւայ Պատկերին մէջ ասով որ «Հրաշակերտ» անուն ունի՝ շատ աշխատութեամբ բանուած կ'երեւայ: «Քառակ» սաւդիւ ածական է, ինչպէս ցոյց վար նախընթացից վրայ տեսանք: Նախընթացից վերարկուք, ինչպէս յայտնի է, «կրկնամած» եւ «եւթնպատիկ» թուական էին, այսպէս ուրեմն «քառակ» ալ: Բայց ի՞նչ է արդեօք որ հոս 4 անգամ կը կրկնուի: Պատկերը դիտելով ուրիշ բան չենք տեսներ՝ բայց եթէ արուեստաւոր գործը՝ խաչաձեւ գծագրութիւնը կամ բանուածքը որ 4 անգամ կրկնուած է. 2 անգամը վերէն կը տեսնուի. անկէ վերջինները ծածկուած են ոմոփորոնին կամ եւթնպատիկ կարգաց կամ Նափորտին մէջ: Չենք գիտեր թէ արդեօք պէ՞տք ենք ըսել որ սակայ յարաբերութիւն մ'ունենայ հին օրինաց քահանայապետաց վակասին՝ որուն համար կ'ըսուի (Ելից ԻԸ. 7), «Երկու վա-

[1] Խաչի թիւը հին կ'ենթադրենք եւ առնեւին անկախ Ն. Լամբրոնացւոյն «Մեկն. պատարագի» (էջ 82) բառերէն, որն որ Եպիսկոպոսի Նափորտին 2 խաչ կ'ընծայէ, Մետրապոլտին՝ 3. Արքեպիսկոպոսին՝ 4. Հայրապետին՝ 5: Ուստի 5 խաչ է. աւելի չէ: Բայց ասոնք յունական եղած պիտ'որ ըլլան: Հայք սկզբնաբար՝ Եպիսկոպոս, Արքեպիսկոպոս, Մետրապոլիտ, Հայրապետ չեն ճանչնար, այլ միայն Եպիսկոպոս եւ Կաթողիկոս կամ Գլխաւոր Եպիսկոպոս:

[2] Հնոցը՝ յունականին պէս՝ առանց պատռուածքի է բոլորովին. ինչպէս բացայայտ ալ կը վկայուի: Յովհ. Կթղ. (Պատմ. Գ.Լ. Լ) կ'ըսէ «զուրջառ նափորտն սրբութեան փոխե զնա (զՀայրապետն Գէորգ) [illegible]» եւ նմաններ:

[3] Տես ի մէջի այլոց Յովհ. Կաթուղիկոսի բառն իր օրով Սմբատէն շինուած Երազգաւորսի եկեղեցւոյն համար (Պատմ. գլ. ԼԶ.) «Եւ զխորան եւ զբեմբն զարդարեալ յոսկեհամակ հանդերձանս եւ ի շղարշեայ պատուականս զնա պճնեալ պայծառացուցանէր, ի համակ ոսկւոյ յարդարեալ եւ ի քրիստոնէական ... (Ակզանոյն) եդեալ ածեալ»: Խօսքը Տեառնականեղին վրայ կը դառնայ գլխաւորաբար:

[4] «Ուրար» ըստ Ասորւոց ըսուած եւ հնչուած, չէ թէ «Որար» կամ «Ովրար», ինչպէս պիտ'որ ըլլար եթէ յունարէնէն առած ըլլային: Նոյն դարուն՝ Երկրորդ Թրգմ. յուն. Կանոնաց ասէզ պարզապէս «Կրար» կ'ըսէ փոխանակ Ὠράριονի, ինչպէս իւրք ալ յառաջագոյն ուրիշ բան չէր, փոխման ունենալով պատանները որբել ջնջել:

կապք ընդ միմեանս խառնեալք եղիցին ի վերայ երկոցունց կողմանց նորա (Ահարոնի) հաստատեալք։"[1] — Յունարէն μίτρα "վակաս" թարգմանուած կամ իմացուած է ի Կոչման Ընծայութեան Կիւրղի լսուելով՝ "Իբրեւ զվիսայի ակն զինիս զվակասն։"

5. "Լայնատարած երկնագոյն"ը Պատկերին մէջ անյայտնի է, իրեն գունէն զատ՝ տարածումն ալ կը ծանուցանեն քովէ քով եկած խորշերը։

Հոս ալ՝ ինչպէս նախորդան՝ պատահական չէ գոյնը, հապա կանոնաւոր, եւ դժուարաւ առանց յարաբերութեան առ Ելից ԻԸ. 31. "Արասցես վակասն պճղնաւորս համակ կապուտակ"։ Մեր ոչ միայն քահանայական հապա նաեւ բոլոր կղերին Շ[illegible] անուամբ կլածին կը պատասխանէ հարկաւ։

6. "Պատուանդան (զորն որ 'պատուանդանիս' կը կարդանք) ոտիցն". մասնաւոր որոշեալ հողաթափ մը եպիսկոպոսական, այնչափ աղնիւ չի ցուցըներ Պատկերը եւ դժուարաւ որոշելի. ոչ անծանօթ ասիկայ հիմայ։

Ըս համեմատութիւնը՝ յայտնի է որ Է եւ Ը դարերուն ալ կանո-նաւորն եւ ըստ կարգին համարուած էր. վասն զի անշուշտ նոյն զգեստները նոյն գոյներով եւ ձեւերով կ'անցնարկուէին Յովհ. Իմաստասէրի գործոց մէջ (Ծառ Բ յեկեղ. տես քիչ մ'ետքը)։ Դեռ մեր Պատկերը կամ գոնէ անոր սկզբնագիրը նկարուած ատեն այս նշանակական գոյներու կանոնաւորութիւնը զգեստուց վրայ տեւած է անտարակոյս։

Ցայս վայր ստորագրուածներն ուղղակի եպիսկոպոսի մը հանդերձանքները կը ցուցընեն. սակայն՝ ինչպէս կ'երեւայ՝ մեծ հանդիսաւորութեան ատեն։ Հրա-հանգութիւնը նորաշէն եկեղեցւոյ մը նաւակատեաց համար կը խօսի, Պատկերը ձեռնադրութիւն մը կը ցուցընէ։ Պէտք է ենթադրել, մանաւանդ թէ կ'են-թադրէ յիշեալ Հրահանգութիւնը, որ ունի եպիսկոպոսն ասկէ ուրիշ գունով եւ կերտուածով հանդերձանք ալ։ Քահանայիցը, ինչպէս բնական է, ի սակաւս կը տարբերէր։ Նափորտ, ուրար կամ ուսանոց, պատմուճան պճղնաւոր (հիմա շապիկ ըսուած) անշուշտ նոյն էր. գուցէ գլխոյ խոյրն ալ՝ սակայն թուխ։

Թէ արդեօք Հայոց կաթուղիկոսն ի սկզբան կամ նոյն իսկ Ը դարուն զատ բան մ'ունէր եկեղեցական պաշտամանց զգեստ, որ զինքն ուրիշ եպիսկոպոսներէն զատէր, գոնէ մեզի ծանօթ չէ։ "Նրկասակ" կամ "կլկնամած քողը" յիշեցինք իբրեւ իրեն յատուկ. սակայն ասիկայ շատ դարեր ետքը յիշատակուած կը գտնենք, թէեւ կրնայ բաւական հին ըլլալ։ Նոյնը կրնանք ըսել կաթուղիկոսին նափորտին համար, որն որ ԺԲ դարուն մասնաւորապէս կ'որոշուի "Նափորտ Բազմախաչ" անուամբ։ Հայրապետի կամ Արքեպիսկոպոսի մը սեպհական կը համարուէր ասիկայ այն ատեն. (Ներս. Լամբր. "Մեկն. Պատր." էջ 82։)

Վերջապէս ուրիշ նկարուց մէջ, օրինակի աղագաւ Մոնաքոնեան ձեռա-գրին մէջ, կը տեսնենք այս "Բազմախաչեանն", այսինքն նափորտ բազմախաչեան կապուտակ՝ զորն որ Կաթողիկոսք ունէին Յունաց մօտ գաղթելէն ետքը։ Անոր համար Գրիգոր Պահլաւունի երբ որ կը կարգէ կաթողիկոս՝ իր եղբայրն զՆերսէս (Շնորհալի), ինչպէս կ'ըսէ Ն. Լամբրոնացի (Վիպաս.)

[1] Լամբր. "Մեկն. Պատր." էջ 147. "Այս-պէս եւ ըստ այսմ օրինակի է եւ նորա քահա-նայից պատմուճանք. զի զգենուն ի ներքոյ [illegible] պատմուճանն ("զլայնատարած երկնա-գոյնն" ըսուած ի Հրահանգութեան) եւ ի վերայ նորին արկանեն զվակասն՝ որ այժմ կոչի առ Ազ-[illegible], այնպէս ըստ որում հրամայեալ է ի զանազան նուիրաց [illegible]։"

"Գլուխ հանուրց զԸնտրեալն օծէր,
Յաղթող ընդ իւր նաւուցանէր,
Արքնամածեալ թող արկանէր,
Նա գաւազան[1] ի ձեռն դնէր,
Բազմախաչեան[2] զգեցուցանէր,
Ամփորոն զանձինքն ածէր,
Փեսայապէս զայլդուք պճնէր,
Գլխոյն պսակ[3] Քրիստոս նստէր„ եւն։

Ասիկայ յունական է, բայց ոչ ամէն եպիսկոպոսաց առ հասարակ. տեսած ենք հին պատկերներ այսպէս, օրինակի աղագաւ՝ Ս. Բարսղի կամ Աթանասի ի Հռոմ անցեալ դարերէն։ Անոր համար չենք գտներ բազմախաչեան նափորաւ (վերյիշեալ Պատկերին մէջ) մեր ձեռնադրող եպիսկոպոսը՝ որն որ ուրիշ բան չէ, բայց պարզ եպիսկոպոս մը. բոլոր գիրքն ալ մինակ Եպիսկոպոսի մ՚ընելու ձեռնադրութիւնները կը պարունակէ։ Մաշտոց մը, սակայն ոչ այնչափ հին, վասն զի 1345ին կը վերաբերի (ի Վենետիկ), երբ դեռ կը գործածուէր սանկ նափորա, քիչ մ՚աւելի կը բացատրէ անուանելով՝ "Նափորթ բազմախաչ նկարեալ եւ անկիւնեալ զարդարած։„ Այս խօսքերը նափորայը տեսնող մը միայն կ՚իմանայ. մեզի հիմա դժուար էր ըմբռնում մ՚ունենալ, եթէ պատահմամբ ձեռքերնիս չ՚ունենայինք պատկերն ալ։ Ահաւասիկ Մոնաքեան օրինակին մէջ "նափորտ բազմախաչ„, զորն որ մեր կաթողիկոսք կը հագնէին գոնէ վերը յիշուած դարուց մէջ. (տես Պատկ. 8)։

Պէտք ենք ի վերայ այսր ամենայնի ասիկայ դիտել եւ նշանակել որ մերինները երբեք գունոց եւ պայծառ գունոց չեղան անտարբեր կամ անզգայ։ Տեսանք որ "բազմադունի„ ակունք եւ "երփն երփն„ իրենց նշանակականք են ի սկզբանէ։ Է կամ Ը դարուն կը տեսնենք՝ որչափ առ այս բերում ունին։ Օրինակի աղագաւ, երբ որ Ոսկեստասիրի քով "Բ. Ծառ. յեկեղ.„[4] կը կարդանք. "Անդ (ի հնումն) պճնաւոր զգենլով ունէր քահանայապետն առ ստորոտովն զանգակս, եւ խոյր ի վերայ գլխոյն եւ վակաս չորեքկարգեան ակամբքն խառնեալ ոսկեով շղթայաձեւիւք ընդ միմեանս, իսկ յեկեղեցի նշանակելով զՔրիստոս՝ զգեցեալ մեզ հաւատովք, սիրով եւ սրբութեամբ։ Իսկ զանգակքն զպայծառ քարոզութեանն՝ որ ի մեզ ծաւալումն բացայայտէ, եւ խոյրն զշնորհս Հոգւոյն զեկուցանէ... Ակաղափակածն զերկնաւորն եցոյց առաքինութիւն, եւ չորրորդն մանուածոյ զանապական արեանն կցորդութիւն... եւ բեհեզովն

[1] Ծանօթ է Գր. Մագիստրոսի տաղը "Յաղագս խաչանշան գաւազանին զոր ընծայեաց Պետրոսի Հայոց կաթուղիկոսի։„ Այսպէս գլուխը գրուած է այն չափեալ բանիւք թղթոյն (տպ. Վենետ. 1868, էջ 90.) "Յուպ, ներգոյ եւ գաւազան՝ մակաւն տուեալ հաստատութեան, Մոյթ ներգոյ մակարդական՝ բոլոր ամէն ժառանգութեան„ եւն։

[2] Խաչին ձեւոյն նկատմամբ մասդրութեան արժանի է որ յունական չէ, հապա պարզ նախնական Հայոց ձեւը մեր պատկերին մէջ, որն որ նաեւ Ցեկորոյ վկայարանին ճակատն ալ կը տեսնենք՝ Ե դարէն։

[3] Ստեփաննոսի Սիւնեաց մետրապոլտին համար կ՚ըսէ Օրբէլեան. "Թագաւորն (Լեւոն Գ.) նմանապէս զգեցուցանէ ի թագաւորական զգեստուցն ըստ հայրապետական ձեւոյն, եւ դնէ կրկին անգամ զխոյր պատուական ի համակ ոսկւոյ ի գլուխն, որ եւ զանուն թագին ընծայեալ միտր կոչէին։„ Հիմա, ինչպէս յայտնի է, "Թագ„ անունը մնացեր է՝ "խոյր„ ալ, "միտր„ ալ մոռցուելով։

[4] Անդ, էջ 138։

*ողջերակա— զաստուածութեանն ընդ բնութիւնս մեր խառնումն, եւ ծնընդեան զծածկեալ խորհուրդ անճառելի տնօրէնութեանն»:*

*Առանձ ջանք մը՝ դոյները մեկնելու:*

*Վերջապէս հոս մեր հին կամ նախնական զգեստաւորութեան գաղափար մը տալով կ'ուզենք ակնարկել որ ինչպէս պատարագնիս ժամանակաւ, գաղթականութեամբ, նոր (բիւզանդեան) կերպարանք առած է, նոյնպէս զգեստաւ-*




*8. ԲԱԶՄԱԽԱՉԵԱՆ. (Ս. Դ Ր. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ)*

*որութիւնն եւ ուրիշ եկեղեցական յարդարմունք, ոչ արհամարհելով կ'ըսենք, քաւ լիցի, շատ բան փոխած կամ աւելցուցած է յունական հիման վրայ, որն որ վերջէն պերճագոյն ձեւացած էր՝ հին հայկականի եւ նոր հայկականի բաժնուելով:*

**Առեն անցնելով ինչպէս շատ լսաց՝ առոնց համար ալ տարբեր ճաշակներ եւ սովորութիւններ տիրեցին: Լամբրոնացւոյ օրով շատ բան ուրիշ կը տեսնենք. առ այս իւր առէկ յիշուած գլքին մէջ բաղմաթիւ յիշատակութիւնք կան:*

* Ասկէ մինչեւ գլխուս վերջը քաղեցինք հնդիննակին թղթերէն, ուր նիւթերը հաւաքուած էին միայն. վերջին ընդօրինակութեան մէջ բան մը գրուած չգտանք: ՀՐՏՐ.

Վերը յիշուած Եկեղեցական կարգաց գիրքը մեկնելով կ'ըսէ (էջ 82)՝ Հայրապետ կամ Պատրիարք “ունին զգեստ զառաքելականն, որ եմիփորոնն է հինգ խաչին խաչիւք զարդարեալ. իսկ նափորտ զգենու բազմախաչ, ի վերայ որոյ արկանէ զպատուական եմիփորոնն:„ — Արքեպիսկոպոսը՝ “նոյն նափորտն բազմախաչ եւ ի վերայ եմիփորոնն չորեքխաչին:„ Ասոնց կարգը կը դնէ Լամբրոնացի նաեւ զԿաթողիկոս: — Մետրապոլիտ՝ “նափորտ միայն՝ առանց խաչի, եւ ի վերայ եմիփորոն երեքխաչին„: — Եպիսկոպոս՝ “նափորտ եւ ի վերայ եմիփորոն խաչին միայն:„ — Քահանայացեալ երէց՝ “նափորտն միայն առանց եմիփորոնի:„ — Սարկաւագունք՝ “զգեստ է նոցա պատմուճան հոլանի առանց գօտւոյ:„ — Կէս-սարկաւագունք՝ “ունին զգեստ որպէս զսարկաւագին՝ հոլանի անգօտի, բայց զուրարն սոքա ընդ ահեակ բազկաւն ածեալ կողէն վերոյ արմկանն ի կախ ունելով կրկին„: — Վերջապէս Անագնոսք՝ “ունին զնոյն զգեստ՝ պատմուճան հոլանի, բայց յուրարն. եւ սոքա ոչ առանց գօտւոյ, այլ գօտի կապեն ի վերայ պատմուճանին:„ Իսկ Փսաղտք “զգենուն որպէս զընթերցողն:„

Այս ամէնը հին հայկականէն շատ տարբեր է: Եթէ ուզենք շատ ուրիշ կէտեր ալ կրնանք ժողվել: Ահա օրարին մասին քանի մը բան: “Կէս սարկաւագն զօրարն յահեակ ուսոյն ըմբռնէ„ կ'ըսուի ստէպ (էջ 86 եւն) ըստ յունական սովորութեան. քահանայն “երկոքումբք ուսովք զնոյն բարձեալ„՝ ինչպէս ցայսօր Լատինացւոց քով. եպիսկոպոսներն “ի վերայ ուրարին ունին եւ զպատուական եմիփորոնն:„ Այսօր՝ ծանօթ է՝ պատարագի զգեստաւորման ժամանակ քահանայն ուրար չի դներ, կամ ուրիշ ձեւով “փորուրար:„ Ուրարի համապատասխանողն է Լամբրոնացւոյ քով “վակասն լանջանոց„ ալ, որ զատ է միւս վակասէն “որ այժմ կոչի առ մեզ ուսանոց„ (էջ 147) կամ ըստ Լամբրոնացւոյ “վակասն ուսանոց„: Յայտնի կ'երեւայ նոյն տեղն ըսած իւր խօսքէն՝ “Իսկ վակասն-լանջաց (կամ եւս “լանջանոց„) եւ նափորտն վասաւակ՝ երկրորդ պատուն որ յետ քահանայապետին. եւ զվակասն-ուսանոց իմանամք քաղցր լծոյն Քրիստոսի տարացոյց... բայց լինելոյ քան զնոսա սարկաւագացն աստիճանի, թէպէտ ունին զվասաւակ պատմուճանն՝ այլ թեզանեօք, եւ զվակասն-լանջանոց[1] ի վերայ ահեակ ուսին միայն:„ Ինչպէս աւելի ալ կը տեսնուի պճնաւոր պատմուճանի գօտեկոյծ եւ թեզանեօք ըլլալը սարկաւագի եւ կիսասարկաւագի կը տրուի, գօտեկոյծ եւ առանց թեզանեաց՝ քահանայի. (էջ 140, եւն:) — Եպիսկոպոսին յատուկ կը ծանուցուի ինչպէս կոնքեռն կամ “թաթպաչ թաթպաթանն„, նոյնպէս նաեւ “բազպանն„՝ որ քահանայից համար չէր ըստ այժմ:[2]

Քահանայական զգեստուց նիւթը Հայոց քով Լամբրոնացւոյ օրով “սեւ-գաւանց„ էր կամ սար (էջ 92.) Լատինացիք կտաւի կը հագնէին՝ կ'ըսէ, իսկ

---

[1] Նոյն տեղը (էջ 147) կ'ըսուի նաեւ “Իսկ սարկաւագացն պատուոյ եւ իշխանութեան նշանակ այս է, զի զվակասն միայն ի վերայ ահեակ ուսին արկցէ ի վերայ պճնաւոր պատմուճանին:„ Ուստի ուրարը պարզ “վակաս„ անուանուած:

[2] Անդ (էջ 147—48) “Իսկ զթաթպաչ թաթպաթանն ունին միայն քահանայապետք յաջակողմ կախեալ ի վերայ բարձիցն, եւ զվասաւակն պճնաւոր ի վերայ այնորիկ՝ զոր այժմ կոչեմք նափորտ...: Իսկ եպիմանիկեանն՝ զոր կոչեմք բազպանն, որ է եւ այս քահանայապետական պատուոյն՝ վասն պատրաստ առնելոյ զձեռսն ի քահանայագործելն՝ սահմանեցաւ. զի մի թեզանիք պատմուճանին սայթաքեցուսցէ զնա ի պաշտօն պատարագին, այլ զի այն զսպեսցէ զձեռսն եւ պատրաստ սպասաւորութեան արասցէ:„ Այս պատճառաւ չէր պակսեր քահանայից ալ. որ այսօր նոյնպէս ունին բազպան. բայց Լամբրոնացի որոշ կ'ըսէ թէ քահանայապետի յատուկ էր այն իւր ատենն:

Յոյնք սուրի. (էջ 147։) Բայց առհասարակ ինչպէս հին յունականին համեմատ էր Հայոց հնագոյնը, Լամբրոնացւոյ օրով ալ նոյն ժամանակի յունականէն տարբեր չէր հայկականը, նաեւ ձեւին կողմանէ։ Որոշ վկայութիւն ալ կու տայ գրելով նոյն տեղը՝ «Իսկ վակաս-ուսանոց, եմիփորոնն եւ այլ ամենայն մի է—նոյն է հնաօրինակաց ամենեցուն, այսինքն ի զանազան որակութեանց թելոց կատարեալ (Յունաց եւ Լատինացւոց քով), ըստ որում է մեզ է փոխանել. նոյնպէս եւ զգեստուցն չէ եւ կերպարան։»

Մեր այժմու զգեստաւորութիւնը շատ մասամբ տարբեր է այս տեղ յիշուածներէն Լամբրոնացւոյ ժամանակներու, եւս առաւել հնագոյն դարերու հանդերձանքէն, ինչպէս ցայս վայր ըսուածներէն ալ յայտնի է։

---

Գ.

ԿԱՀՔ

Սրբազան կահք առ հասարակ «Սպասք սրբութեան» ըսուած արդէն Ե դարուն մէջ՝ մասնաւոր օրհնութեամբ կ՚առնուէին ի գործածութիւն։ Նոյն կոչմամբ հասարակ գործածութենէ կը զատուէին։ Ուրիշ լեզուներէն աւելի մեր մէջ հիները փոյթ տարած են կարելի եղածին չափ քրիստոնէական կրօնի վերաբերեալ իրաց եւ պաշտամանց անունները հասարակ գործածութենէ հանել, եւ թողուլ գրեթէ քրիստոնէական պիտոյից յատուկ. այսպէս «սարկաւագ» որ պարզապէս սպասաւոր (minister) կը նշանակէր, դադրած է ուրիշ բան նշանակելէն՝ բայց եթէ աստուածային դրութեամբ հաստատուած կարգին երրորդ աստիճանը կրողը. այսպէս «սկիհ» որն որ ըստ ինքեան առ հասարակ բաժակ կամ ըմպանակ կը նշանակէր.[1] նոյնպէս «մաղզմայ» որն որ առ հասարակ պնակ կը նշանակէր։ Թէպէտ եւ աս վերջիններուն տեղ «բաժակ» եւ «սկաւառակ»[2] ալ կ՚ըսուէր։

Աս մետաղեայ (ազնիւ մետաղեայ) սպասուց մէջ՝

Ա. Սկաւառակ եւ բաժակ կը տեսնենք «Նշխարանոց» ըսուած։[3]

Բ. Բուրվառ՝ որն որ (որչափ յիշեալ դարուն նոյն տեղ յիշատակուած ունինք,) երբեք «ամբարանոցք» ի կախ ունէին, որուն ընկեր էր «խնկանոց» մը. (տես Յովհ. Իմաստ. էջ 140։)

Գ. Քշոցներ՝ զորոնք Առաքել. Սհմնդր. Պատարագին մէջ ալ յիշուած կը գտնենք (ῥιπίδιον, flabellum). նոյն իսկ հայերէն անուանը մէջ անոնց սկզբնաբար ինչ վախճանի գործածուիլը կը տեսնենք. վասն զի «քշել» հին հայկականին մէջ մանր կամ միջակ թռչտող անասունները վռնտելու կը գործածուի։ Այսպէս ալ վերոյիշեալ Առաք. Սհմնդր. Ը. գրքին պատարագին մէջ նշանակուած։[4] Հիմայ ինչպէս Յունաց, նոյնպէս Հայոց քով մետաղեայ է։ Սակայն Հայոց քով միանգամայն փոքրիկ բոժոժք շուրջանակի գալով՝ միանգամայն ձայն հանելու ալ՝ մանաւանդ թէ հիմայ միայն ասոր՝ սահմանուած է։ Մեր օրերն, ստուգիւ եկեղեցւոյ անհոգութեամբ, հասարակօրէն թեւերով եւ

---

[1] Նոյնը պատահած է լատին լեզուին մէջ calix բառին։

[2] Ոսկեբ. Մեկն. Պաւղ. Բ. 60 եւն։ Բաժակ՝ շատ յաճախ։

[3] Յովհ. Իմ. Ճառ Բ. յեկ. էջ 140 «Նշխարանոցին արծաթիէ... զոր նուիրեաց ի սպաս պաշտաման։»

[4] Տես վերը՝ էջ 33։

ուք ծածկելով թռչող հրեշտակաց (քերովբէից) պատկերները զանց կ'առնուլին, որոնք Յունաց լիփիլխոնէն մնացած են եւ մեր ձեռագրաց պատկերները կ'երեւցընեն:[1] Կը տեսնենք որ Ը դարուն այդէն կան աս բոժոժք, եւ նշանակութիւնն ի նոյն կ'ընթանայ, այսինքն «Օրինակ այրոց սերովբէիցն՝ զոր Դանիէլ եցոյց հազարք հազարաց պաշտէին զնա»: Այսպէս կար ան առենն ալ աս «քշոցաց հայումն.» (անդ, էջ 140:) Սակայն ճշդիւ կը խօսի ԺԳ դարուն մէջ յունական Կանոնաց հաւաքումը թարգմանողը (ինչպէս կը համարինք՝ Դիոգ. Կաթ. յԱնաւարզայ), ինչպէս թեւերը Սերովբէից թեւերուն, այսպէս բոժոժները Քերովբէից աչքերուն վերաբերելով:

Դ. Կանթեղներ չէ թէ եկեղեցւոյ տաճարին մէջ, հապա ի մանաւորի Խորանին մէջ ալ կը յիշուին:

Ե. Մանաւոր Աշտանակի մը վրայ Խնկաստանի ըրած խօսքը վերջապէս կը մնայ մեզի մութ:[2]

Ո՞վ կրնայ ասոնց ամէնուն ձեռնատուր նախնական յեղերը ցուցընել: Քանի մը մատենից մէջէն լուսանցից գծագրութիւն կը նշանակենք՝ որոնք խաչ, կանթեղ, բուրվառ, սկիհ, կուժ կը ցուցընեն, որոնք կրնան մեր հին ձեւերուն ըլլալ՝ շատ կամ քիչ համանմանութեամբ:

Կրնայ Տեկորոյ վկայարանին ճակատն եղած կլոր ձեւը նոյն իսկ «սուրբ հացը» ցուցընել, բոլորակ վրան խաչ կոխուած:

Հայոց խաչը պարզ, հին Հռոմայ եկեղեցւոյն խաչն է. յունականը ծանօթ չէ: Տեկորոյ եկեղեցւոյն ճակատը նոյնը կը գտնենք՝ Ե դարէն: Շրջանակ մը՝ որն որ զխաչիւ պատած է հոն, հին Հռոմէական եկեղեցւոյ սովորութեան մէջ ալ նոյնպէս է, օրինակի աղագաւ, Ս. Պետրոսի եկեղեցւոյն ի սարբիկլեայս պահուած քարեղէն խաչը բոլորակի մը մէջ, որն որ այնպէս Ս. Պետրոսի հին եկեղեցւոյն Sodariumի Ciboriumի վրան է եղեր:

Տարակոյս չի կրնար ըլլալ որ հիմակ հայկական հերձուածոց մէջ դեռ պահուած՝ ձեռամբ սեառնապութիւնն ի պատարագին մեր նախնականն է, թէպէտ եւ մենք կաթողիկեայքս թողած ենք:

---

[1] Աս գուցէ մէկ հատիկ ձեռագիրը Ս. Ղազ. Մատենդրնին մէջն է, յառաջ քան զամն ՊԱ (= Թուական Քրիստոսի 1352) գրուած. հաս էջ 45. «Քշոցն եւ ակունքն յայտ առնեն զվեց-թեւեան Սերովբէս եւ զբազմաչեայ Քերովբէիցն զըմբռնաբերութիւնն»:

[2] Էջ 140. «Իսկ աշտանակն, խաչն լուսոյ, եւ ի վերայ նորա գունդ վառեալ, աստուածութիւն եւ թնարքի շնորհաց»: — Ինչպէս Հանդերձից, նոյնպէս կանուց ծոխութիւնն անսովոր չէր Հայոց քով: Յովհ. Կաթողիկոս (Պատմ. Գլ. ԻԴ) կը պատմէ արաբացի ոստիկանին Բագուանու գիւղն գալն, որ «երեկօթս անդ առնէր, եւ տեսեալ անդ զգեղեցիկ եւ զյառաջ չքնաղատես սպաս սատուածային խորանին, զոսկեղէնս եւ զարծաթեղէնս, եւ զգունակ գունակ երանգս առագաստին սրբութեան եւ զհանդերձս եւ զարկանելիս» եւն: Նոյն կարգի յիշատակութիւնք ցանցառ չեն:

# ՎԵՐՋԱԲԱՆ

Մեր կարծիքն է որ Հայոց պատարագն առաջին կերպարանաց պէտք է դառնալ։ Աւելի մեր գործքը չէ։ Եկեղեցւոյ պաշտօնէից գործն է, որոնք երկու կողմանէ ստիպեալ են առ այս քննութիւն։

1. Մէկ մը՝ բուն անուամբ գիտութեան, ըստ որում պատարագները Հայոց քով մեծ ասպարէզ կը բանան քննութեան, հարազատն անհարազատէ զատելով։

2. Երկրորդ՝ բանիւ Ջրոյն սուրբ բաժակին, որուն այնչափ եկեղեցական ընդդիմութիւն եղած է, եւ որուն փոփոխութեան այնչափ ջերմեռանդ են ուղղափառ իշխանութիւնք. եւ սոյն պատարագները Ջրախառն բաժակին սկզբնական գոյութիւնն աքանչելապէս յայտնի կ'ընեն։

Կրնան յիշել նախընթացից գործքերը, Տրուղեան ժողովին վճիռը եւ զանի յառաջացընել եւ քահանայապետաց այնչափ ատեն հետզհետէ ատոր հաստատուն ըլլալը՝ մինչեւ ցաղաչել իսկ, եւ սոյն բարեփոխութիւնը յառաջացընել, եւ վերջապէս իրենց պաշտօնի ծանրութիւնը՝ որնոր կը ստիպէ առ այս գործ։

*Չէ՞ր կրնար արդեօք ի դէպ համարուիլ որ Հայ ազգն ալ՝ այսօրուան հասարակ մէկ պատարագէն աւելի, որ դարերէ ի վեր իբրեւ միակ ազգային պատարագ բռնուած է սխալ ըմբռնմամբ մը, պատարագներ ունենար, ինչպէս ունին այսօր ուրիշ եկեղեցիք՝ եւ մեր Հայք ալ ունեցած են սկզբնաբար. — այսինքն գէթ երկու պատարագ ունենանք այսօր մենք ալ, իմա՝ հին Բարսեղեանն ու Այսօրուանը, որ մեր՝ Ն պատարագ անուանուած Նազիանզեանէն քիչ կը տարբերի՝ որն որ արդէն ամբողջ 5 դար մեր Նախնի Հայոցմէ գործածուած է։ Այսօրուան պատարագը պահուի այնպէս՝ ինչպէս հիմակ ի գործածութեան է անփոփոխ՝ իւր սարքն, այսինքն պահուի զգուշութեամբ՝ հիմակուան Խորհրդամատոյցը, անոր խորհրդական ծէսքն ու զգեստը թէ ձայնաւոր եւ թէ թիւ պատարագի մէջ։ Իսկ մեկալը, այսինքն Բարսեղեանը գործածուի գէթ տարւոյն քանի մը ժամանակները՝ ինչպէս կ'ընեն այսօր Յոյնք, — մենք պահելով մեր ազնուական բաղարջը — իսկ ծխովք, եթէ ուզուի, եւ զգեստուք յունականին նմանելով, ինչպէս մեր հին Հայքն սկզբնաբար կ'ընէին, եւ — զգեստուց նկատմամբ — այլեւայլ հին հայ ձեռագիր պատկերք գեղեցիկ նկարուք՝ որ այսօր ձեռքընիս ունինք, մեր պատարագաւոր Հայոց Յունական ձեւը յայտնապէս կը հաստատեն։ Բայց աս, դարձեալ կ'ըսենք, կարծիք է միայն. գործադրութիւնը՝ եկեղեցական բարձր իշխանութեանց հաւանութենէ եւ կարգադրութեննէն կախուած է։

---

* Այս վերջին հատուածը Խմբագրին (Հ. Քերովբէի Վ. Սպննեան) յաւելուածն է, զոր պահեցինք։ ՀՐՏՐ.



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

# ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

---

Յամին 1843 Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան Ընդհ. Աբբահայր Գեր. Արիստ. Արքեպ. Ազարեանի եւ գլխաւորաբար Վ. Հ. Յակովբոս Վ. Պօղարեանի (յետոյ Աբբահայր) ջանիւք, ժամանակին հայ մեծատուններու ձեռնտուութեամբ, եւ գլխաւոր աջակցութեամբ Պարամեան Պր. Աղէքս. Ռաֆայէլի, Խուսուֆեան Պետրոս Ամիրայի եւ Արսլեան Պր. Գրիգորի՝ Վիեննայի Մխիթարեան Միաբանութիւնն հիմնարկեց "Արամեան Ընկերութիւն"։ Ընկերութեանս նպատակ դրուած է հայ գրասէրներու դրամական նպաստովը՝ դիւրութիւն ունենալ ամէն կարգի ազգային եւ քաղաքական գրքեր տպելու։

Արամեան Ընկերութեան կանոններն հետեւեալներն են.

1. Ցմահ անդամակցութեան համար մի անգամ ընդ միշտ կը վճարուի 100 ֆլորին աւստրիական (= ֆր. 212.50 = լր. 79.—)։ Կրկին կամ աւելի անդամակցութիւն՝ իւրաքանչիւր անդամին առատաձեռնութենէն կախում ունի։ 100է նուազ վճարմունքը՝ իբր լոկ նպաստ Ընկերութեան կ'ընդունուի։

2. Անդամն իրաւունք ունի Ընկերութեան հրատարակած ամէն գրքերէն մէկ (եթէ կրկին կամ աւելի բաժին վճարած է՝ նոյնչափ) օրինակ ձրի ընդունելու, ցորչափ կ'ապրի։ Իսկ եթէ անդամը հասարակութիւն կամ Ընկերութիւն է, ցորչափ նոյնը ի գոյութեան է։ Գրոց առաքման ծախքը անդամոց վրայ է։

3. Անդամոց բաժիններէն կազմուած գումարն անձեռնմխելի դրամագլուխ է. որուն շահովը եւ գրոց վաճառմանէն յառաջ եկած գումարով նոր գրքեր պիտի տպուին։ Վերջինս կարելի է նաեւ դրամագլխոյն վրայ աւելցընել։

4. Գրքերն որչափ կարելի է աժան պիտի ծախուին։

5. Անդամոց անուանքն եւ Ընկերութեան հաշիւը՝ Ընկերութեան իւրաքանչիւր հրատարակութեան վրայ պիտի դրուի, ինչպէս նաեւ գրքին գինը։

Ինչպէս Յայտարարութեանս կցուած հաշիւներէն կ'երեւայ՝ 1843—1894 Ընկերութեանս անդամակցած են 41 հոգի, 64 բաժին ստորագրելով, որով կազմուած է ֆլ. 6.725.73 դրամագլուխ մը, եւ տպագրուած 14 գիրք։

Թէ Ընկերութեանս անուան ու նպատակին, եւ թէ ժամանակիս պահանջումն է, որ մեր ազգին մատենագրութիւններն ժամանակիս քննական ուղղութեամբ մանրամասն ուսումնասիրուած լոյս տեսնեն։ Այս պատճառաւ Վիեննայի Մխիթարեան Միաբանութիւնն որոշած է իւր մտադրութիւնն ուղղել այս շատ կարեւոր եւ ազգին մեծապէս օգտակար կէտին, եւ հետզհետէ՝ որչափ պարագաները կը ներեն, հնարաւոր կատարելութեամբ պատրաստել հայ հին մատենագրութեան հրատարակութիւնները եւ յանձնել Արամեան Ընկերութեան վարչութեան, որ ըստ կարի կատարեալ եղանակաւ լոյս հանուի Ընկերութեան ծախքով։

Այս ուղղութեան եւ ամէն նկատմամբ տարուած խղճամիտ խնամոց կրնայ վկայել Ընկերութեանս սոյն ԺԱ. հրատարակութիւնը՝ “Սրբազան Պատարագամատոյցք Հայոց„, որ Ա. Հատորն է “Քննական հրատարակութիւն Մատենագրութեան եւ Թարգմանութեան Նախնեաց Հայոց„ ձեռնարկութեան։ Ասոր պիտի յաջորդեն նոյն կերպով յօրինուած հատորներ նախնեաց մատենագրութեան։

Ազգիս ինքնաճանաչութիւնն այժմ այնչափ զարգացած է, որ վստահ ենք թէ ձեռնարկուացս անհրաժեշտ պէտք եղած ուսումնական, բարոյական եւ նիւթական ձեռնտուութիւնը պիտի չզլանան ազգային հաստատութիւնք եւ անհատք, այսպիսի հատորներ ամենայն կատարելութեամբ եւ շուտով ի լոյս հանելու համար։ Այսով Հայն այս կողմանէ պիտի կարենայ Եւրոպական ամենաբարձր զարգացեալ ազգերու այս կարգի ուսումնական արտադրութեանց հետ աներկիւղ մրցիլ, եւ պատուով պսակուիլ։

“Հայ ձեռագրաց Մայր ցուցակն„ եւ “Ազգային Մատենադարանն„, զոր Վիեննայի Մխիթարեան Միաբանութիւնը իբր տասը տարիէ վեր սկսած է հրատարակել եւ պիտի շարունակէ, պատրաստութիւնք են նախնեաց մատենագրութեան քննական հրատարակութեան։ Ցոյց տուեցաւ ըստ բաւականի՝ թէ որչափ թերի են ցայժմ հրատարակուածները։ Այս Ա. Հատորն Ընկերութիւնս ամենայն վստահութեամբ հրապարակ կը հանէ այսօր, միշտ կատարելագունի հասնելու ճգամբ։

Յուսանք որ յաջորդ Հատորը պիտի կարենայ Ընկերութեանս նոր անդամոց շարք մը հրապարակ հանել, որոնք թէ այսպիսի բարձր նպատակներու ձեռնտու եղած ըլլալու պատիւն եւ ուրախութիւնը կ'ունենան, եւ թէ Ընկերութեան հրատարակած եւ հրատարակելի գրքերը կը վայելեն։

ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Ի ՎԱՆՍ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

Ի ՎԻԵՆՆԱ

# ԺԱ. ՀԱՇԻՒ ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

## ԱՆՈՒԱՆՔ ԱՆԴԱՄՈՑ ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

| Թիւ ընկալագրի | Անուանք անդամոց Արամեան Ընկերութեան | Անդամակցութեան ժամանակը | | Բաժին | Դրամագլուխ | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | | | Ֆլ. | քր. |
| 1 | Ղարամեան Ռաֆայէլ Աղէքսանդր Ասպետ | 1843 | Մարտ 4 | 5 | 500 | — |
| 2 | Եուսուֆեան Պետրոս Ամիրա | 1843 | Ապրիլ 10 | 5 | 500 | — |
| 3 | Այրոյեան Աբրահամ | 1843 | " 10 | 2 | 200 | — |
| 4 | " Ստեփան | 1843 | " 10 | 4 | 400 | — |
| 5 | Աբէլեան Գրիգոր | 1843 | " 10 | 2 | 200 | — |
| 6 | Սարգսեան Յակոբ | 1843 | Դեկտ. 1 | 2 | 200 | — |
| 7 | Ազարեան Յովհաննէս | 1843 | " 1 | 3 | 300 | — |
| 8 | Համսօն Վիչէն | 1843 | " 4 | 2 | 200 | — |
| 9 | Ճէվահիրճեան Գրիգոր (Ճիւյա) | 1843 | " 10 | 2 | 200 | — |
| 10 | Սարգսեան Ռուտոլֆ | 1843 | " 11 | 1 | 100 | — |
| 11 | Մանասեան Բուղանդ | 1843 | " 11 | 1 | 100 | — |
| 12 | Կարապետեան Յովհաննէս | 1843 | " 14 | 1 | 100 | — |
| 13 | Նիկողայոսեան Ղազարոս | 1843 | " 20 | 1 | 100 | — |
| 14 | Շանշեան Նիկողայոս | 1845 | Յուլիս 8 | 1 | 100 | — |
| 15 | Մ. Վ. | 1844 | Ապրիլ 18 | 1 | 100 | — |
| 16 | Եղիսաբեթուպոլսոյ Հասարակութիւն | 1844 | Յուլիս 8 | 1 | 100 | — |
| 17 | Տիւզեան Յակոբ | 1844 | " 27 | 2 | 200 | — |
| 18 | Սամոշուայվարի Հասարակութիւն | 1844 | " 31 | 1 | 100 | — |
| 19 | Լազարէվ Խաչատուր | 1844 | Սեպտեմ. 30 | 3 | 300 | — |
| 20 | Բավլօ Մկրտիչ | 1845 | Յունուար 1 | 1 | 100 | — |
| 21 | Ալլահվէրտեան Աբրահամ Ամիրա | 1845 | Ապրիլ 11 | 1 | 100 | — |
| 22 | " Անտոն Պէյ | 1845 | " 11 | 1 | 100 | — |
| 23 | Ջէմպէրէքճեան Պետրոս | 1845 | Յունիս 4 | 1 | 100 | — |
| 24 | Թընկըրեան Յովհաննէս | 1845 | Յուլիս 24 | 1 | 100 | — |
| 25 | Աղնաւորեան Միքայէլ | 1845 | Նոյեմբ. 2 | 1 | 100 | — |
| 26 | Տէվրիշեան Սերովբէ | 1846 | Յունուար 11 | 1 | 100 | — |
| 27 | Քըլճեան Վիչէն | 1846 | Փետր. 1 | 1 | 100 | — |
| 28 | Տատեան Յովհաննէս Ամիրա | 1847 | Մայ. 5 | 2 | 200 | — |
| 29 | Ալլահվէրտեան Գրիգոր եւ Յովհաննէս Պէյք | 1847 | Յունիս 20 | 1 | 100 | — |
| 30 | Համազգեաց Ընկերութիւն | 1848 | Յունուար 4 | 1 | 100 | — |
| 31 | Աւգալեան Յովհաննէս | 1849 | Յունիս 6 | 1 | 100 | — |
| 32 | Մարտիրոսեան Գալուստ | 1850 | Յունուար 30 | 1 | 100 | — |
| 33 | Յովհաննեան Ղազարոս | 1850 | " 30 | 1 | 100 | — |
| 34 | Պիւլպիւլճեան Յովսէփ | 1850 | " 25 | 1 | 100 | — |
| 35 | Ֆինճանճեան Ներսէս Վ. | 1851 | Օգոստ. 31 | 1 | 100 | — |
| 36 | Թօսունեան Անանիա | 1852 | Դեկտ. 31 | 1 | 100 | — |
| 37 | Հանըմեան Յարութիւն | 1857 | Յունուար 30 | 1 | 100 | — |
| | Փոխանակեալ գհին ֆլ. Աւստր. ի նոր ֆլ. յաւելու | | | | 295 | — |
| 38 | Կաթողիկոսարան Զըմմառու | 1861 | Հոկտ. 31 | 1 | 105 | — |
| 39 | Ֆունդեան Աստուածատուր | 1862 | Յուլ. 12 | 1 | 105 | — |
| 40 | Հայ մը | 1892 | Ապրիլ 11 | 1 | 100 | — |
| 41 | Գարագաշեան Ա. Մ. | 1894 | Ապրիլ 30 | 2 | 220 | 73 |
| | | | | 64 | 6725 | 73 |

## ԺԱ. ՀԱՇԻՒ ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

**1 ՄԱՅԻՍ 1894էն ՄԻՆՉԵՒ 30 ԱՊՐԻԼ 1897**

Մուտք — Ելք

| Մուտք | Ֆլ. | Քր. | Ելք | Ֆլ. | Քր. |
|---|---|---|---|---|---|
| Թ. Հաշուէն կ'աւելնար | 5.871 | 88 | Ծախուցառաքման եւ կազմից, եւն 1894 Մայիս 1 — 1897 Ապր. 30 . . | 285 | 70 |
| 4% շահ 6.725.73 Ֆլ. դրամագլխոյ 1894 Մայիս 1—1897 Ապր. 30 | 807 | 09 | Տպագրութեան 500 օր. "Սրբազան Պատարագամատոյցք Հայոց" գրքին | 4.087 | 58 |
| Ի վաճառմանէ մատենից 1894 Մայ. 1 — 1897 Ապր. 30 . . . . . | 71 | 93 | Կ'աւելնայ ԺԲ. Հաշուին անցուցանելի . . . . | 2.377 | 62 |
| | 6.750 | 90 | | 6.750 | 90 |

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿՇԻՌ

**ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ**

**ՑԱՄԷՆ 1843—1897 ԱՊՐ. 30**

Մուտք — Ելք

| Մուտք | Ֆլ. | Քր. | Ելք | Ֆլ. | Քր. |
|---|---|---|---|---|---|
| Անձեռնմխելի դրամագլուխ | 6.725 | 73 | Տպագրութեան 15 մատենից ընկերութեան ըստ Ա—ԺԱ. Հաշուոց . . | 14.954 | 22 |
| 4% շահ դրամագլխոյ 1843 Մարտ — 1897 Ապր. 30 ըստ Ա.—ԺԱ. Հաշուոց . . . . . | 13.042 | 22 | Ծախք առաքման, կազմից փոխանակութեան դրամոյ, եւ այլն ըստ Ա.—ԺԱ. Հաշուոց . . . . . | 1.815 | 65 |
| Ի վաճառմանէ մատենից ընկերութեան ըստ Ա.—ԺԱ. Հաշուոց . . . . | 6.105 | 27 | Ի հաւասարութիւն մնայ մաքուր ստացուածք ընկերութեան . . . . | 13.111 | 42 |
| Շտեմարան մատենից, արժէք . . . . . . | 4.008 | 07 | | | |
| | 29.881 | 29 | | 29.881 | 29 |

# ՄԱՏԵԱՆՔ

## ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

| | Ֆր. |
|---|---|
| Ա. Նկարագիր ուսմանց, որ է Օգուտ իւրաքանչիւր մասանց գրագիտութեան, ի Հ. Մատաթիա Վ. Գարագաշեան, 1845 (գրաբար). . . . . . . | 1.50 |
| Բ. Գիտութիւն Տէրութեանց, կամ վիճակագրութիւն Եւրոպայ, ի Հ. Ղեւոնդ Վ. Յովնանեան, Հատոր Ա. 1847 (գրաբար) . . . . . . . . . | 1.50 |
| Գ. Գիտութիւն վաճառականութեան. ի Հ. Ղուկաս Վ. Տէրտէրեան, 1848 (աշխարհաբար) . . . . . . . . . . . . . . . . . . . . . | 1.25 |
| Դ. Պատմութիւն Հայոց, Հայկազանց Տէրութեան սկսեալ մինչեւ մեր ժամանակը. ի Հ. Եփրեմ Վ. Չագըճեան, 1851 (աշխարհաբար)։ Բ. Տպագրութիւն, 1872 . . . . . . . . . . . . . . . . . . | 3.50 |
| Ե. Պատմութիւն քաղաքականութեան եւրոպական Տէրութեանց ընդհանրապէս, ի Հ. Ղեւոնդ Վ. Յովնանեան, Հատոր Ա. 1856 (աշխարհաբար) | 1.25 |
| Զ. Նոյն Հատոր Բ. 1856 . . . . . . . . . . . . . . . | 1.25 |
| Է. Գործնական Առեւտրախօսութիւն, կամ Գլխաւոր առեւտուրները եւ անոնց դիւրին կերպով գործադրութեան առաջնորդ, ի Հ. Եփրեմ Վ. Չագըճեան, 1858 (աշխրհբր.)։<br>Բ. Տպագրութիւն, 1869։<br>Գ. Տպագրութիւն, 1884 . . . . . . . . . . . . . . . | 2.— |
| Ը. Ատլաս կամ Աշխարհացոյց տախտակք ի պէտս ազգային դպրոցաց, յօրինեալ եւ ծրագրեալ ի Հ. Աստուածատուր Վ. Աւագեան, 1857։<br>Բ. Տպագրութիւն, 1860 . . . . . . . . . . . . . . . | 4 — |
| Թ. Պատմութիւն քաղաքականութեան եւրոպական Տէրութեանց ընդհանրապէս, Հատոր Գ. 1857 . . . . . . . . . . . . . , | 1.25 |
| Ժ. Նոյն, Հատոր Դ. 1860 . . . . . . . . . . . . . . . | 1.25 |
| ԺԱ. Գործնական վաճառագիտութիւն ի պէտս վաճառականաց, առեւտաւորաց, դպրոցաց եւ տանուտեարց, ի Հ. Եւգինէոս Վ. Համբարեան, 1867 (աշխրհբր.) . . . . . . . . . . . . . . . | 1.50 |
| ԺԲ. Լուդովիկոս Թիլյի սկզբնական դասագիրք պարզ ուսողութեան. Թարգմանեց Հ. Պետրոս Վ. Պիւլպիւլեան, 1868 (աշխրհբր) . . . . . | 1.— |
| ԺԳ. Ընդհանուր Պատմութիւն համառօտ. ազգային դպրոցաց համար, ի Հ. Գրիգոր Վ. Գովրիկեան, 1879 (աշխրհբր.). . . . . . . . . . | 2.— |
| ԺԴ. Առակք Լաֆոնդենի, Թարգմանեաց Ա. Մ. Գարագաշեան, 1894 (գրբր։) | 4.50 |
| ԺԵ. Սրբազան Պատարագամատոյց Հայոց, ի Հ. Յովսէփ Վ. Գաթրճեան (աշխարհաբար) 1897 (րբ. 12. — մարք 28. — ֆլ. 16. —) . . . .<br>(Վերջին ԺԵ. Հրատարակութեան ճամբու ծախքին համար՝ ֆր. 2.50 = ֆլ. 1.20 = րբ. 1.— աւելի վճարելու է։) | 34.— |

